# ԱՐՕՐ

## ՄԻԱՄՍԵԱՅ ՀԱՆԴԷՍ

ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՐԱԿԱՆ,
ԳԻՏԱԿԱՆ-ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ
ԵՒ ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ

№ 1

II տարի

1911

ԹԻՖԼԻՍ

ՅՈՒՆՈՒԱՐ

### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

էջ

## ՆՈՐ ՍՏԱՑՈՒԱԾ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

1) Սէր եւ Ազատութիւն, կատակերգութիւն 5 արարուածով, Գաբրիէլ Սունդուկեանի (նոյն և Համմալ), Թիֆլիս, 1910 թ., էջ 131, գ. 1 ր.։

2) Իրանի պատունառները, պատկերներ, արկածներ և վիպակներ, Ատրպետի, Թիֆլիս, 1911 թ., էջ 345։

3) Սանքօ, Վրթանէս Փափազեանի, Կ. Պօլիս, 1910 թ., էջ 110, գ. 5 ղրշ.։

4) Դիւքող ննջիւններ, գրամատիկական էտիւդ մի գործ., Ա. Գենցի, թարգմ. Յակոբ Յակոբեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 20, գ. 20 կ.։

5) Տէրն ու բանւորը, Լ. Ն. Տոլստոյի, թարգմ. Ռ. Խան-Ազատի, Թիֆլիս, 1910 թ. էջ 126, գ. 20 կ.։

6) Մի էջ Հայկական ուսուցման պատմութիւնից, ժողովածու Սեդրաք Մանդինեանի խմբագրութեամբ, Թիֆլիս, 1910 թ., էջ 134, գ. 60 կ.։

7) Ազգագրական Հանդէս, եռամսեայ, XX գիրք, 1910 թ. № 2, Թիֆլիս, էջ 215։




# ԻՄ ՕՐԱԳՐԻՑ

I

*Ոչ, ոչ, հարազատ չեն նոքա սրտիս,*
*Թող կորչեն, գնան... Ինչ փոյթ թէ նոքա*
*Կարող են լինել դարման... և սրտիս*
*Գոռ ու խոր վէրքը կը թեթևանայ...*
*Օտար աստղի տակ ինչքան էլ զգուեն,*
*Փայփայեն, ժպտան... օտար են նոքա...*
*Այսօր կ'ժպտան, կ'խնդան, կ'զգուեն...*
*Բայց վաղը՝ կասեն.—օտար ես, գնա...*

II

*Ընկեր, լսում ես այն հառաչանքը,*
*Որ դուրս է թռչում եղբօրդ կրծքից...*
*Տեսնում ես արդեօք նորա տանջանքը,*
*Նորա վիշտ ու խոց... սիրտը արնալից...*
*Այնտեղ, նրա կրծքում մի անհուն ովկեան*
*Մրրիկ, փոթորիկ, կռիւ ու յուզում...*
*Կեանքի գոռ խաղն է... հասիր օգնութեան...*
*Թէ՞ վշտի ժամին դու չես ճանաչում...*

ԼԵՒՈՆ ԳՐԻԳՈՐԵԱՆՑ

*Ս. Պետերբուրգ, 1911 Թ.*

---

# ՕՏԱՐ ԵՐԳԻՉՆԵՐ

## I.

### *Վալախական լեգենդա*

*(Մաքսիմ Գորկի)*

*Խորին անտառում ապրում էր Փերին,*
*Լայնածուփ գետում լողանում յաճախ.*
*Մի օր էլ անփոյթ յանձնվեց ջրին,*
*Ուռկանը ընկաւ ու գերվեց, աւա՜ղ։*
*Խեղճ ձկնորսները վախեցան սաստիկ,*
*Սակայն ներկայ էր Մարկոն պատանի.*
*Յաւերժահարսին նա գրկեց ճարպիկ,*
*Համբոյրներ ցանեց դէմքին նազանի։*
*Եւ Փերին ասես մի ոստ էր ճկուն,*
*Հզօր ձեռքերում դողում էր իսպառ.*
*Կառած Մարկոյին աչքերը սիրուն՝*
*Մեղմ ծիծաղում էր, նայում անբարբառ։*
*Ու նա փայփայեց Մարկոյին ողջ օր,*
*Սակայն երբ իջաւ գիշերը խաւար,*
*Մեր ուրախ Փերին չքացաւ անդորր,*
*Ու տխրեց Մարկոն, տխրեց վշտահար։*
*Եւ անտառի մէջ, Դանուբի ափին,*
*Քայլում է Մարկոն գիշեր ու ցերեկ,*
*Միշտ հառաչում է՝ «ուր է իմ Փերին»,*
*Ալիքներ նրան՝ «չինք տեսել երբէք»։*
*Եւ նա զայրացաւ՝ «չէ, դուք ստում էք,*
*Հիմա խաղում էք, գիտեմ նրա հետ»։*
*Եւ յիմար տղան ընկաւ մտաբեկ,*
*Ընկաւ Դանուբը ու կորաւ յաւէտ։*
*Լողում է դարձեալ Փերին Դանուբում,*
*Ինչպէս լողում էր Մարկոյից առաջ,*
*Իսկ Մարկոն չկայ... Բայց երգը տրտում*
*Էլի յիշում է Մարկոյին այն քաջ։*

. . . . . . .

*Իսկ դուք ապրում էք աշխարհի վրայ,*
*Ինչպէս ապրում են ճիճուները կոյր.*
*Հեքեաթ չեն պատմիլ ձեր մասին վկայ,*
*Ձեր մասին երգ էլ չեն ասիլ ոլոր։*

Դ. ՆՈՐԵԿ.

# ԽԻՂՃԸ ՎԵՐԱԾՆՎԵՑ

*Նորավէպ*

ՇԱՀՐԻԱՐԻ

---

*Բանտային պահապան զինուորը իր խոժոռ նայուածքով դիտեց երկաթապատ փոքրիկ և կլոր պատուհանից բանտի ներսը. մի քիչ յետոյ նրբանցքում թնդաց ծանր քայլերի աղմուկ և բանալիների զնգզնգոց. լսվեց № 5 բանտային խուցի երկաթապատ դռան նիգերի հանումը. դուռը ճռճռաց իր կոճակների վրայ, բացվեց և մի նոր կալանաւոր ներս հրվեց. ետևից պահապանը շպրտեց մի կապոց, մի վերմակ, մի բարձ. դուռը նորից փակվեց: Նիգերը նորից դրվեցին և շշմած կալանաւորը, կանգնած խուցի պաղ սալայատակի վրայ, զգաց իրան կիսամթութեան մէջ:*

*—Փառք քեզ Աստուած, շշնջաց նա, այս օրին ես արժանացայ: Լաւ նոր տարի եղաւ ինձ համար:*

*Կալանաւորը սկսեց դիտել շուրջը. հետզհետէ լուսաւորվեցին նրա աչքերը և նա նոր նկատեց, որ մէն մէնակ չէ խուցի մէջ: Երեք հոգի այլ կալանաւորներ, պառկած մահճակալների վրայ, ակնապիշ նայում էին նրան և զննում նրա շարժումները:*

*—Բարև ձեզ, եղբայրներ,—ասաց նոր կալանաւորը, որքան ուրախ եմ, որ միայնակ չեմ:*

*—Ի՞նչ կայ ուրախանալու, անմիտ, պատասխանեց երեքից աւելի երիտասարդը, վեր կենալով և նստելով իր մահճակալի վրայ: Չլինի՞ դուրսը քեզ համար աւելի*

վատ էր անց կենում․ գուցէ այս բանտը քեզ համար դրախտ է։

— Ոչ, դուրսը, իմ տանը, սաստիկ լաւ էր, ես բախտաւոր էի․ ես իմ Թագուհու և Լևոնի հետ չափազանց բախտաւոր էի։ Մենք միասին հանդիպեցինք Նոր տարին․ երէկ, Նոր տարու օրը, միասին այցելութիւններ արինք մեր բարեկամներին և ազգականներին, իսկ այսօր ինձ բերին ձգեցին այս բանտը։ Այժմ Թագուհիս և Լևոնս նստած լաց են լինում անշուշտ։

Եւ Նոր կալանաւորի աչքերը ջրակալվեցին արտասուքով։

Ապա նա հեզութեամբ արտասանեց։

—Երևի ճակատիս այս էր գրված․ փառք Աստծուն, նա չի թողնի, որ անմեղ տեղ ես տանջվեմ։ Ես ոչ մի բանի մէջ յանցաւոր չեմ։ Երևի դուք ևս յանցաւոր չէք և ձեզ ևս այստեղ են ձգել սխալմամբ։ Մի յուսահատվէք․ փառք տուէք Աստծուն․ նա ձեզ ևս կազատէ։

—Էհ, բարեկամ,—ասաց երկրորդ կալանաւորը, հեզ և համակրական դէմքով մի ծերունի․ այստեղ մտնողը հեշտ կերպով չէ պրծնում և շուտով լոյս աշխարհի երեսը չէ տեսնում։ Յոյսդ կտրիր շուտով Թագուհուդ և Լևոնիդ տեսնելուց․ աւելի լաւ է, պատրաստիր քեզ համար ահա այն անկիւնում անկողին և կարգի բեր իրերդ։ Տեսնում ես, մենք չորս ամիս է այստեղ ենք և դեռ չենք ազատվել․ ո՞վ գիտէ դեռ քանի-քանի ամիսներ այստեղ փակված պէտք է մնանք։

—Ամիսնե՞ր, սարսափած գոռաց Նոր կալանաւորը․ այդ անկարելի է․ ես ոչ մի յանցանք չեմ գործել․ այդպիսի օրէնք չկայ աշխարհում, որ անմեղ մարդուն բռնեն, զրկեն իր տնից տեղից, իր կնոջից, երեխաներից և բերեն փակեն բանտում։ Հապա ո՞վ պէտք է պահի իմ խեղճ երեխաներին․ չէ՞ որ նրանք սովամահ կը լինեն,

ախր նրանք դեռ փոքր են, նրանք նոր են սկսել ծխական դպրոցը գնալ։

—Էյ, դու, նոր կալանաւոր, թնդաց յանկարծ դռան ետևից, կլոր պատուհանի ծակից, պահապան զինուորի ձայնը. այստեղ պոռալ չէ կարելի։

Նոր կալանաւորը, վախեցած, քաշվեց դէպի այն քունջը, որ ծերունի կալանաւորը ցոյց էր տուել, անկողին պատրաստելու համար։ Նա փռեց վերմակը փայտեայ տախտի վրայ և, նստելով, սկսեց մեղմ և անշշուկ արտասուել։

Յանկարծ նա ցատկեց նստած տեղից, չոքեց սալայատակի վրայ, խաչակնքեց երեսին և սկսեց հանդարտ աղօթել։

—Ահա քեզ մի ապուշ, բարձր քրքջալով խօսեց երիտասարդ կալանաւորը. նա դեռ հաւատ ունի Աստծու վրայ. նա աղօթում է։ Երևի տանն էլ է շարունակ աղօթում և սակայն այդ աղօթքը չ՚ազատեց նրան բանտը ընկնելուց։

Եւ ապա դառնալով դէպի աղօթողը, կոպտօրէն ասաց.

—Էյ դու, պարոն ճգնաւոր, մեր զահլէն մի տար քո աղօթքներով, այստեղ եկեղեցի չէ։

Նոր կալանաւորը շարունակեց մրմնջալ իր աղօթքը։

—Ինչ գործ ունես նրա հետ. թող աղօթի, ինչքան կամենում է, ասաց ծեր կալանաւորը։

Վերջացնելով աղօթքը, նոր կալանաւորը վերկացաւ, մօտեցաւ երիտասարդ կալանաւորին և քաղցրութեամբ ասաց.

—Եղբայրս, ինչու՞ ես բարկանում. միթէ դու նեղութեան ժամանակ չես աղօթում, միթէ դու քրիստոնեայ չես։ Չէ՞ որ այժմ էլ նեղութեան մէջ ես և պէտք է աղօթես։

—Ե՛ս աղօթեմ. երբէք,—պատասխանեց զայրացած երիտասարդը. աղօթքը ինձ ոչ փող կը տայ, ոչ ազա-

տութիւն։ Քեզպէս յիմարներն են աղօթում։ Այ, աղօթիր հարիւր տարի այստեղ և կը տեսնես, որ աղօթքը քեզ չի ազատի. քո ոսկրները կը փտեն այստեղ։

—Դու սխալվում ես, ես կազատվեմ, որովհետև անմեղ եմ, ոչ մի յանցանք չեմ գործել։

—Անմեղ ես, հապա ինչի համար են քեզ բերել այստեղ ձգել։

—Չգիտեմ. անշուշտ մի սխալմունք կայ։ Եւ դրա համար էլ աղօթում եմ, որ Աստուած ազատի ինձ այս փորձանքից։ Իսկ դու, դու միթէ մեղաւոր ես, որ քեզ բերել ձգել են այստեղ։

—Ես, ես... կմկմաց երիտասարդ կալանաւորը, և յարեց անվստահ շեշտով.—ես մեղաւոր չեմ. ես չեմ գողացել։

—Ուրեմն քեզ մեղադրում են գողութեան մէջ, հարցրեց Նոր կալանաւորը։

—Այո. մի օր բազարում ծախում էի մի արծաթէ գօտի. ինձ բռնեցին և ասացին. որ գողացել եմ։

—Բայց միթէ արծաթէ գօտին քոնը չէր։

—Իմն էր, այսինքն... ես ստացել էի իմ բարեկամից նուէր, նորից կմկմաց երիտասարդը։ Բայց եթէ նոյն իսկ գողացած լինեմ—յանկարծ գոռաց նա զայրագին—միթէ յանցանք է. որն է լաւ, սոված մեռնել, թէ գողանալ։ Այ տես ինչ է անում այն Աստուածը, որին դու աղօթում ես. մէկին այնքան է տալիս, որ չէ իմանում ինչ անի իր հարստութիւնը, միւսին այնքան չէ տալիս, որ գոնէ քաղցած չմեռնի։

Նոր կալանաւորի դէմքը համակվեց խորին տխրութեամբ. նա՝ թախծալից նայեց ծերունի կալանաւորին, որ յօնքերը կիտած, դիտում էր երիտասարդ կալանաւորի շարժումները և գլուխը օրօրում։

—Եղբայր, մօտենալով երիտասարդ կալանաւորին ասաց Նորը. ես տեսնում եմ, որ դու դառնացած մարդ ես. ինչու չես պարզ խոստովանում, որ արծաթէ գօ-

տին դու ես գողացել։ Ես տեսնում եմ որ խղճմտանքիդ վրայ ծանրութիւն շատ կայ. արի աղօթիր և թեթևացիր. ոչ թէ մեզ, այլ ուելեայն Աստծուն խոստովանիր յանցանքներդ և հաւատա, որ կը փրկվես։

—Յանցանքներս, ի՞նչ յանցանքներ, զարհուրած բացագանչեց երիտասարդ կալանաւորը. ես ոչ մի յանցանք չեմ գործել. դու որտեղից գիտես որ ես յանցանք եմ գործել. սուտ, շուտ սուտ, ինչ գիտես. սուտ է։

Եւ ցատկելով նստած տեղից, սպասնագին մօտեցաւ նոր կալանաւորին, որ քիչ քիչ յետ ընդկրկեց դէպի իր անկիւնը, վախեցած երիտասարդ կալանաւորի դաժան և վայրագ արտայայտութիւն ստացած դէմքից։

—Ես ոչինչ չգիտեմ քո մասին, ես քեզ առաջին անգամն եմ տեսնում. ես ոչ մի չար բան չեմ մտածում քո մասին, Աստուած չանի. ես մի խեղճ կօշկակար եմ, ուրիշ ոչինչ և...

Նոր կալանաւորը չկարողացաւ շարունակել և աւ՛ի բերան կանգնած մնաց, այնքան զարհուրեցրեց նրան երիտասարդի տեսքը։

Սա «կօշկակար» խօսքը լսեց թէ չէ, այնպէս գունատվեց, այլայլվեց, որ քիչ էր մնում հաւասարակշռութիւնը կորցնի և ընկնի։

—Դու կօշկակար ե՞ս, սուտ, սուտ, շուտ, կակազեց նա. ո՞ր փողոցում։

—Ն... փողոցում, պատասխանեց նա. բայց ինչու այդքան վախեցար. ինչ կայ, եղե՞լ ես իմ խանութում, ինձ տեսե՞լ ես։ Ինչու ես հարցնում։

—Ոչ, ոչ, երբէք, հաւաքելով իր վերջին ճիգերը պոռաց երիտասարդը. ես քեզ չեմ ճանաչում. այնպէս հարցրի. այն փողոցում ես երբէք չեմ եղել։

Եւ դողդոջուն քայլերով, հարբած մարդի պէս մօտենալով իր անկիւնին, ընկաւ տախտի վրայ, վերմակը քաշեց գլխին, կարծես սոսկացած լոյսից և լռեց։

Կօշկակարը մի քանի րոպէ կանգնած մնաց, ապա

նայեց ծերունի կալանաւորին, որ շարունակում էր լուռ հանդիսատես լինել, չոքեց տախտի առաջ և նորից սկըսեց աղօթք մրմնջալ։

—Ես աղօթեցի սրա համար, ասաց նա, գիմելով ծերունուն, երբ վերջացրեց աղօթքը և վերկացաւ ու գլխի նշանով ցոյց տուեց երիտասարդին. Նա վշտացած, տանջված մարդ է երևում. Նրան խղճալ պէտք է։ Խեղճ երիտասարդ. կեանքի մէջ երևի ոչ մի ուրախութիւն չէ ունեցել։

Մի քիչ յետոյ խուցի դուռը բացվեց և պահապանի կոպիտ ձայնը թնդաց.

—Էյ, նոր կալանաւոր, եկ, քննիչը քեզ պահանջել է, գնանք։

Երբ դուռը նորից փակվեց երկու կալանաւորների վրայ, երիտասարդը բարձրացրեց գլուխը վերմակի տակից, նայեց շուրջը, նայեց դէպի անկիւնը, ուր ցրված էին կօշկակարի իրերը և մրթմրթաց. երանի թէ այլ ևս չվերադառնայ այդ անիծեալը. նա հոգիս ծակծկեց իր աղօթքով և կարեկցութեամբ։ Քիչ էր մնում, ամէն բան խօստովանէի...։

Եւ նորից վերմակը քաշեց գլխին։

## II

Անցաւ երեք ժամ, անցաւ չորս ժամ։

Երիտասարդ կալանաւորն անհանգիստ, այլայլված, խռոված, անցնում էր բանտային խուցի մի ծայրից միւսը, յետ քայլում և նրբանցքից լսվող ամենափոքր ոտնաձայնին ականջ դնում։

Ծերունի կալանաւորը սաստիկ զարմացած, դիտում էր նրա բոլոր շարժումները։ Մօտ հինգ օր է, ինչ նրանք միասին էին խցի մէջ և նա երբէք նրան չէր տեսել այդպէս յուզված, ալեկոծված։ Ընդհակառակը, ամբողջ

*ժամանակ նա ուրախութիւններ էր անում, ցինիկ անեկդոտներ էր պատմում, սպառնում էր իր թշնամիներին խիստ պատժել, երբ բանդից դուրս կը գայ և ծաղրում էր իրան, ծերունուն, որ յիմարութիւն էր ունեցել խոստովանել քննիչին իր գործած մի յանցանքը։*

*Արտաշէսը—այդպէս էր երիտասարդ կալանաւորի անունը—երբ իմացել էր ծերունու բանտարկութեան պատճառը իրա ծերունու բերանից, գոչել էր.*

*—Աստուած ախորժակը ում է տուել, փիլաւն ում։ Տօ, ապուշ ծերունի, մուրհակը վաւերացրած չէ եղել նօտարական կարգով. ստորագրութիւնդ հաստատելը դըժուար էր, առաջ ուրացել էիր, էլ ինչու՞ համար խոստովանեցիր ստորագրութիւնդ, որ քեզ բերեն ձգեն այս բանտը։*

*—Խիղճս խօսեց և ստիպեց ինձ, ասել էր ծերունին։*

*—Խիղճդ, քա՜հ քա՜հ ծիծաղել էր Արտաշէսը. խիղճս որն է. խիղճը՝ մարդիս խելքն է, խիղճը յիմարների համար է։ Այ, ես քեզանից աւելի մեծ յանցանքներ եմ գործել և միշտ ազատվել եմ իմ խելքով։ Եւ երբէք խիղճս ինձ չէ տանջել, չէ ստիպել յիմար խոստովանութիւններ անել։*

*Այժմ Արտաշէսը այլ ևս չէր ծիծաղում, կատակներ, ցինիկ անեկդոտներ չէր պատմում։ Նա մռայլ էր, դէմքը մթագնած և սաստիկ յուզման մէջ անցուդարձ էր անում, յաճախ նայում այն անկիւնը, ուր ցրված էին կօշկակարի իրերը կամ ականջները խլշում, երբ նրբանցքում ոտքի քայլեր էին լսվում։*

*Ծերունին սկսել էր հասկանալ, որ Արտաշէսի հոգեկան տրամադրութեան այդ յանկարծակի փոփոխութեան մէջ անմասն չէ կօշկակարը։*

*Անցաւ հինգ ժամ։*

*Մութը արդէն սկսել էր ընկնել, երբ դուռն նորից ճռճռաց իր կռճակների վրայ, բացվեց և կօշկակարը, ար-*

տասուաթոր, ներս հրվեց կոպտաբար պահակ զինուորների ձեռքով։

Կօշկակարը, մօտ 40 տարեկան մի նիհար, թխադէմ մարդ, որի երեսի վրայ ցաւի և աշխատանքի կնճիռները արդէն բացել էին ակօսներ, կանգ առաւ մի քանի րոպէ անխօս. արտասուքի շիթերը կաթում էին աչքերից և ընկնում պաղ սալայատակի վրայ. ապա նա գնաց նստեց իր տախտի վրա, գլուխը քաշ գցեց, առաւ ձեռների մէջ և սկսեց նորից անմռունչ, մեղմիկ արտասվել։

Արտաշէսը, որ աւելի և աւելի այլայլվում էր, նստած նոյնպէս իր տախտի վրայ, ակնապիշ նայում էր կօշկակարին։

Մի քիչ յետոյ սա աչքերը սրբեց, ոտքի կանգնեց և չոքելով պաղ սալայատակի վրայ, ձեռները բարձրացրեց դէպի առաստաղը և սկսեց աղօթել.

—Ով Աստուած, գթա իմ խեղճ, անտէր զաւակներին. նրանք քաղցած կը մեռնեն, եթէ ես չլինեմ։

Ապա գլուխը խոնարհեց և սկսեց լռելեայն աղօթել։

Ծերունի կալանաւորն իր հերթին սկսեց հեկեկալ։

—Ոչ, պոռաց յանկարծ Արտաշէսը, վեր ցատկելով տեղից և խենթ աչքերով մօտենալով կօշկակարին. այլ ևս համբերել չեմ կարող, անտանելի է, հոգիս փշաքաղվում է, հերիք է, դադարեցրէք ձեր աղօթքը և լացը։ Վերջապէս պատմիր, ինչու ես այսքան լացում։

Կօշկակարը բարձրացրեց գլուխը. նրա դէմքի վրայ հոգեկան այնպիսի տանջանք, վիշտ, թախիծ էր դրոշմված, որ Արտաշէսը մի քայլ հետ ընդկրկեց։

—Ինչպէս չը լացեմ, շշնջաց նա. ախր ինձ մեղադրում են մարդասպանութեան մէջ. քննիչն ասաց, որ ինձ կուղարկեն Սիբիր, տաժանակիր աշխատանք։ Էլ ով կը պահէ իմ խեղճ երեխաներին, ով նրանց համար հաց կաշխատէ. ախր նրանք փոքր են, անտէր, մայր չունեն, հօրից էլ զրկվեն, ինչ կը լինի։

—Քեզ մեղադրում են մարդասպանութեան մէջ, սաստիկ յուզված գոչեց ծերունի կալանաւորը, բայց չէ որ դու մարդ չես սպանել, միթէ չասացիր։

—Ինչպէս չասացի. ասացի, որ ես մի հաւ մորթելու անգամ անընդունակ եմ, որ ես հալալ, պարկեշտ մարդ եմ, բայց քննիչն ասաց, որ ինձ դէմ զօրեղ ապացոյց կայ։ Նա ասաց, որ վեց օր առաջ Գ. քաղաքում գիշերով սպանվել է մի հարուստ և ժլատ ծերունի և սպանվածի սենեակում գտնվել է իմ անցագիրս։ Այդ անցագրով և եկել բռնել են ինձ։

—Ա՜հ, ճչաց յանկարծ Արտաշէսը և սաստիկ գունատված ընկաւ իր մահճի վրայ։

Ծերունին և կօշկակարը վազեցին նրա մօտ։

—Ինչ պատահեց քեզ, եղբայր, հարցրեց կօշկակարը, դու հիւանդ ես։

—Ոչ, ոչ, սիրտս ծակեց, ոչինչ, կանցնի։ Ինձ ցաւ պատճառեց, որ անմեղ տեղ քեզ բռնել են։

Ծերունի կալանաւորը խէթ խէթ նայեց Արտաշէսին։

Սա վերմակը քաշել էր գլխին և պառկել, բայց մերթ մերթ բարձրացնելով վերմակը գլխից, գաղտագողի նայում էր կօշկակարին, որ լուռ, անմռունչ նստած էր տախտի վրայ և ինչ որ մրմնջում էր, ախ ու վախ քաշում։

Միքանի ժամ այդպէս մնալուց յետոյ, կօշկակարը նորից չոքեց սալայատակի վրայ և սկսեց աղօթել. Նա աղօթում էր բարձրաձայն, ջերմօրէն, խառնելով խօսքերի հետ և արտասուքը։

—Գոնէ ինձ այստեղ թողնէին, հեկեկում էր նա, դառնալով դէպի ծերունի կալանաւորը. այստեղ երեխաներիս կը տեսնեմ. այսօր մեր հարևան ուստա Գէորգը բերել էր իմ Թագուհուն և Լևոնին. Նրանք իրանց լացով ջիգարս խաշեցին։ Բանտապետը յայտնեց, թէ քանի որ այստեղ մնամ, կարող եմ միշտ նրանց տեսնել, բայց եթէ քննիչն ինձ ուղարկէ մեծ բանտը, ուր ուղար-

կում են մարդասպաններին, այլ ևս ոչոքի տեսնել չեմ կարող։ Ողորմած Աստուած, դու գթա իմ խեղճ զաւակներին։

Եւ նորից սկսեց հեկեկալ։

—Ի սէր Աստծու, պաղատագին աղաչեց Արտաշէսը, տեղից ցատկելով. դադարիր լալուց. ես այլ ևս դիմանալ չեմ կարող. կամ կորիր, հեռացիր աչքիցս, յարեց նա որոտաձայն և սպառնալից։

Կօշկակարը սրբեց արտասուքը, տխրութեամբ նայեց Արտաշէսին և պատասխանեց.

—Մի բարկանար, եղբայր, այլևս չեմ լացի. իմ լացով քեզ ոչ մի վնաս չեմ տալիս, հանդարտվիր։

Եւ նստելով տախտի վրայ, նա կամացուկ հանեց շորերը, պառկեց անկողնում և քիչ յետոյ լսելի եղաւ նրա հանդարտ, կանոնաւոր շնչառութիւնը։

Նա քնած էր իբրև մի անհոգ մանուկ։

—Միայն խիղճը հանգիստ և անդորր մարդիքն են այսպէս խաղաղ քնում, ասաց ծերունի կալանաւորը։

Արտաշէսը խոժոռ և խէթ նայուածք ձգեց ծերունու վրայ։

—Ի՞նչ ես կամենում ասել դրանով, ծերուկ։

—Ոչինչ, միայն այն, որ ես և դու այդպէս հանդարտ քնել չենք կարող, թէև մեծ վիշտ ևս ունենանք, ինչպէս սա։

Շուտով և ծերունին քնեց։

Անքուն մնաց միայն Արտաշէսը։ Նա անկողնում տապալ տապալ էր լինում։ Քունը փախել էր նրա աչքերից։ Փակում էր աչքերը թէ բանում—նա միշտ իր առաջ ցցված էր տեսնում կօշկակարին՝ ծնկաչոք, աղօթելիս, թէև կօշկակարը հանդարտ քնած էր։ Նրա ականջին միշտ հնչում էր կօշկակարի աղիողորմ կոծը. «Էլ ով կը պահէ իմ խեղճ երեխաներին, իմ խեղճ Թադուհուն և Լևոնիկին»։ Նա խցում էր մատներով ականջները և դարձեալ կոծը թնդում էր։ Նա քաշում էր վեր-

*մակը գլխին, որ ոչինչ չտեսնէ, չլսէ, բայց տեսիլը չէր չքանում, կոծը չէր դադարում։*

*Միայն լուսադէմին նրա ծանրացած աչքերը փակվեցին և նա քնեց։ Այդ քունը սակայն այնքան անհանգիստ էր, որ մի քանի անգամ նա ճիչ արձակեց և զարթեցրեց թէ ծերունուն և թէ կօշկակարին։*

## III

*Առաւօտեան, երբ Արտաշէսը աչքը բացեց, տեսաւ կօշկակարին դարձեալ ծնկաչոք՝ սալայատակի վրայ և աղօթելիս։ Նա կամեցաւ նորից ծածկել գլուխը վերմակով, բայց այդ միջոցին ճռռաց խուցի երկաթապատ դուռը և ներս մտաւ բանտապետը՝ իր զինուորներով։*

*—Կալանաւոր, դիմեց նա աղօթող կօշկակարին, պատրաստվիր, քեզ պէտք է փոխադրենք մեծ բանտը։*

*Եթէ կայծակը ճեղքէր առաստաղը և տրաքէր խուցի մէջ, կօշկակարը այնքան չէր սարսափի, ինչպէս այդ խօսքերից սարսափեց,*

*Նա իբրև կայծակահար, ընդարմացած մնաց։*

*—Չես լսում, կալանաւոր, թնդաց բանտապետի բիրտ ձայնը. հաւաքիր իրերդ և գնանք։*

*Նա ուշքի եկաւ քիչ քիչ, արտասուքը հոսեց աչքերից։ Եւ նա հեկեկաց.*

*—Վայ իմ խեղճ երեխաներ, իմ Թագուհի և Լևոնիկ, էլ ով ձեզ կը կերակրի, ով ձեզ կը պահի։ Արդեօք մէկ էլ կը տեսնեմ ձեր երեսը։*

*Եւ հեծկլտալով ուղղեց նայուածքը ծերունի կալանաւորին և Արտաշէսին և աղերսագին թախանձեց.*

*—Եղբայրներ, աղօթեցէք, որ Աստուած խղճայ ինձ և իմ զաւակներին։*

*Պահապանները դուրս հանեցին նրան. դուռը փակվեց նրա ետևից և խուցի մէջ մնացին դարձեալ ծերունին և երիտասարդը։*

Արտաշէսը արձանացած կանգնել էր, ապա մի խուլ հառաչ արձակեց և գրեթէ շնչասպառ ընկաւ տախտի վրայ, գլուխը ծածկեց վերմակով և փորձեց նորից քնել։

Նրա բոլոր ջանքը ապարդիւն անցաւ. Մի մղձաւանջ ծանրացել էր նրա կրծքի վրայ և նա ստիպված էր ամեն րոպէ ցատկել, աչքերը յառել դէպ այն անկիւնը, ուր մի քիչ առաջ կօշկակարը ծնկաչոք աղօթում էր։ Նրա ականջին շարունակ հնչում էին կօշկակարի աղիողորմ լացը. «ով պէտք է պահէ իմ խեղճ երեխաներին, ով պէտք է պաշտպանէ նրանց»։

—Բաւական է, բաւական է, թող այդ լացդ, հերիք աղօթես—արտասանեց նա բարձրաձայն։

Ծերունի կալանաւորը, որ մեծ անհանգստութեամբ դիտում էր նրա բոլոր շարժումները, ասաց.

—Բայց այդ ում հետ ես խօսում, Արտաշէս։

—Ո՞ւմ հետ, չես տեսնում կօշկակարին այնտեղ չոքած. տես, նա դարձեալ լաց է լինում և աղօթում։

—Հանդարտվիր, գժվել ես, ինչ է. կօշկակարին չէ՞ որ տարան։

—Տարան, ո՞ւր տարան։

—Ներքևի բանտը, ուր պահում են մարդասպաններին։

—Ահ, ճչաց Արտաշէսը և ընկաւ տախտի վրայ։ Ամբողջ օրը տևեց Արտաշէսի այդ դրութիւնը. ծերունու համար պարզ էր, որ նա ենթարկվել է հոգեկան տանջանքի։ Ամբողջ օրը նա ոչինչ չկերաւ, չխմեց, ապուշի նման նայում էր դէպի այն անկիւնը, ուր կօշկակարը չոքում և աղօթում էր և աչքերը ծածկում ձեռներով, կարծես վախենալով տեսնել այնտեղ մի ուրուական, մի ոգի, որ տանջում էր նրան։

Երեկոյեան դէմ հոգեկան տանջանքը, յուզմունքը այնպիսի խոր դրօշմ էր դրել Արտաշէսի դէմքի վրայ, նրա աչքերը այնպէս մոլեգնաբար նայում էին դէպի կօշկակարի անկիւնը, որ ծերունի կալանաւորը մտածեց

իմաց տալ բանտապետին և կանչել տալ բժշկին, բայց Արտաշէսը յայտնեց.

—Ոչ, ես հիւանդ չեմ, ջղային եմ դարձել, մի քիչ քնեմ, կանցնի ամեն բան։

Եւ նա պառկեց քնելու։

Անցաւ մօտ մի ժամ, նա անշարժ պառկած էր։ Յանկարծ, նա վեր թռաւ, նայեց, մեկնեց ձեռները դէպի անկիւնը և աղերսագին գոչեց.

—Ի սէր Աստծու, այլ ևս մի լար, մի աղօթիր, դու նորից կը տեսնես քո զաւակներին։

Եւ ցատկելով դէպի խուցի դուռը, սկսեց խփել բռունցքով և գոռալ.

—Կանչեցէք, շուտ կանչեցէք բանտապետին, վազեցէք, կանչեցէք։

Նրբանցքում իրարանցումն սկսվեց. քիչ յետոյ դուռը բացվեց. ներս մտաւ բանտապետը, շրջապատված զինուորներով։

Արտաշէսը, մոլեգին և հրացայտ աչքերով, մազերը գզգզված, դէմքը այլայլված, բարձրաձայն աղաղակեց.

—Ազատեցէք կօշկակարին, Գ. քաղաքում ժլատ և հարուստ ծերունուն սպանողն ես եմ, կօշկակարն անմեղ է։ Ես գողացայ նրա անցագիրն այս քաղաքում, գնացի Գ. քաղաքը և կազմակերպեցի սպանութիւնը։ Գողացած փողերը և իրերը թաղել եմ դաշտում, կարող էք գտնել։ Գալով այս քաղաք, ես գիտմամբ սարքեցի արծաթէ գօտու պատմութիւնը որ ինձ իբրև գողի բանտարկեն և ազատ մնամ հետախուզութիւնից։ Ես այլ ևս դիմանալ չեմ կարող նրա լացին, նրա աղօթքներին։

Երկրորդ օրը կօշկակարը գրկում էր իր Թագուհուն և Լևոնիկին։

# ՆՈՒԱԳՆԵՐ

## I

### Թերթը

Երբ հանդիպեցինք ու ես մէկ անգամ եկայ քեզ մօտ, երկար խօսեցինք ու վերջը դու տուեցիր ինձ քո ալբոմը, որ մի բան գրեմ յիշատակ։

Ոսկեայ կողերով, գոյն-գոյն թերթերը անուշ հոտով էր յագեցրած այն։

Առայ ու գրեցի։

Չգիտեմ ինչ էր գրածս, միայն յիշում եմ, որ այն սրտիցս բղխեց յանկարծ ու կանգնեց վարդագոյն թերթի վրայ։

Անցան շատ օրե՜ր, տարինե՜ր։

Երբ կրկին հանդիպեցինք, հարցրեցի ալբոմի մասին։ Դու լուռ էիր, ու քանդեցիր նուրբ շորերով գրկված կուրծքդ, հանեցիր այնտեղից մի թերթ ու ցոյց տուեցիր այն ինձ։

Անուշ հոտ էր բուրում։

Ճանաչեցի թերթը, ալբոմի վարդագոյն՝ թերթը, որի վրայ գրել էի. սրտիցս բղխած խօսքերը։

Եւ ամբողջապէս բռնված շնորհակալութեան զգացումով, անզգայաբար խլեցի քո փոքրիկ, քնքուշիկ ձեռքը, հպեցի շրթերիս երկար, երկար ու նայեցի սև աչերիդ։

Սև՛, խորո՜ւնկ աչերիդ...

## II

### Այն գիշեր

Լուեց հանգչող լոյսի վերջին ճիչը ու ամեն ինչ մեռաւ խաւարի լայն գրկում։ Խաղաղութեան ու լռութեան ժամը եկաւ հանդարտ ու սփռվեց ամեն կողմ։

Միայն գետերում, խորունկ լճերի մէջ ապրող չքնաղ փերիները զարթեցին, որ կէս գիշերին գրաւեն աստղերին ու թմրեն նրանց այրող գրկերում, յաւիտենական անմեռ սիրոյ պարզած հովերից ծածանվող դրօշակի տակ։

Զարթեց հովը ու սուսիկ անցաւ շոյելով խոտերի, ծաղիկների գլխիկները, որոնք օրուայ խորշակից այրվել, թուլացած կախ էին ընկել։ Զարթեց անտառը։ Կեանքից հալածուած ծների լուռ պատմութիւններ սկսեցին դարաւոր ծառերը ու բոլորը մեղմ օրօրվեցին, կարծես վշտի, հառաչանքի ծանրութիւնից։

Եւ բուն սկսեց կռանչել դարեր շարունակ լսվող իր հառաչանքը, որ գալիս, պարուրում էր իմ կուրծքը։

Այն գիշեր սիրտս տառապում էր վշտից ու կուրծքս մխում էր անյայտ թափառումներից յոգնած։ Եւ... և յանկարծ նա, այն փերին եկաւ յուշիկ, նստեց իմ մօտ։ Ես զգացի նրա բազուկների շփումը իմ պարանոցին ու շուրթերս հպեցի չքնա այտերին։

Ա՜խ, այն գիշեր նա եկաւ ինձ մօտ ու ես արբած, թմրեցի, նրա բազուկներում ու հանգայ...

III

Մահուան ժամը

Սուս, սուս։

Քամի է, կատաղի քամի ու ճռճռում է ամեն ինչ,

Ծառերը հառաչում են ու նրանց ձայնակցում է բուն։

Թռչունները լռել են ու վախից դողում են։ Մէկը թաքնվել է պատուհանի անկիւնում ու սարսափած նայում է ծառին։

Այնտեղ նրա բունն է։ Ծառը ճարճատվում է, արմատները պոկվում են։

Սարսափելի է։

Կուրծքը սեղմվում է ու սիրտը հառաչում։

Օդում խշշոցի ու թափահարման ձայն է լսվում։

Նա նայում է։

Իջնում է հանդարտ, սպիտակ շրջազգեստը ծածանելով մի կին։

Քամին սուլում է, ծառերը հառաչում են, բուերը ձայնակցում են նրանց ու բոլորը միասին կրկնում են.

«Մա՜հը, մա՜հը, մա՜հ…»։
Մա՜հը, մահուան ժամը։
Ու կծկվում է ամեն ինչ, սիրտը, սիրտը…
Օ՜, սարսափելի է, սարսափելի…
Մահուան ժամը…

IV

## Կը յաղթեն

Կեանքի յորձանուտի մէջ առաջ էր սողում հսկայ ամբոխը, շաղախված ցեխի, հողի հետ, միմեանց հրելով, քաշքշելով։

Եւ ապրելու համար իւրաքանչիւրը ենթարկվում էր անխուսափելի կռուի ու նրանք թափում էին միմեանց արիւնը, ջախջախում մէկմէկու գլուխ ու թաղում հոտած ճահճի խորքում։

Ես անցայ նրանց մօտով ու լուռ արհամարհանք էր երևում իմ դէմքիս ու շտապում էի որքան կարելի է շուտ հեռանալ, որ նրանց վրայ շերտաւորված կեղտը ինձ վրայ չընստէր։

Ու երբ շտապ անցնում էի, նրանք թափվեցին վրաս ու սկսեցին քաշքշել ինձ, ցած գլորելու, որպէսզի ես էլ միանամ նրանց ու միասին, նոր, թարմացած ուժերով, ես էլ նրանց հետ, սողանք։

Ես աշխատում էի ազատվել, իմ արհամարհանքի թոյնը թափվեց՝ նրանց վրայ և շատերը փախան նրանցից, բայց միւսները դեռ քարշում էին ինձ։

Ու երբ հաւաքած ամբողջ ուժերս պատրաստվում էի թոյնի մի ամբողջ տարափ թափելու նրանց բոլորի վրայ, չգիտեմ ով, անշշուկ մօտեցաւ ինձ ու շշնջաց.

—Նրանք շատ են, կը յաղթեն…

V

## Նկարը

Այսօր պատահմամբ թղթերիս մէջ մի նկար տեսայ ու երբ նայում էի, սիրտս անյոյս հառաչեց։

Նա էր, ու ինքն էր նուիրել ինձ իր նկարը այն ժամանակ, երբ սիրում էինք միմեանց ու մեր ուղին վարդերով էր ծածկված։

Այո, կարմիր, քնքուշ վարդերով, որոնք իրենց թերթերը փռում էին մեր ոտքերի տակ ու անուշ բոյրով լցնում էին մեր շուրջը։

Ու քաղցր էին այն օրերը, երբ նստած մի ծառի տակ, կամ ծաղկի, խոտի վրայ, չարաճճի զեփիւռի պահուն, արբած անուշ բոյրերով, նայում էինք միմեանց, կամ զրուցում երկար...

Ա՜խ, ինչ սքանչելի էր, երբ երբէք, երբէք չէինք յագենում միմեանց նայելուց։

Բայց եկաւ և հրաժեշտի, յաւիտենական բաժանման ժամը իր ողջ ցաւերով։

Այն ժամանակ վարդերը, կարմիր կոկոն վարդերը փշերի էին փոխվել. մեր ճամբան անանցանելի էր ու խոր անդունդն էր կանգնել մեր մէջ։ Ու մեր բաժանումից տարիներ յետոյ, նրա նկարը գցեցի մոռացութեան զամբիւղը, որովհետև վարդերը փուշի էին փոխվել։

Ու այսօր, երբ մոռացութեան զամբիւղից հանեցի նրա նկարը ու նայեցի, սիրտս միայն անյոյս հառաչեց։

Վարդերը փշերի են փոխվել ու երբէք, երբէք վարդ չեն դառնալու։

ԱՐՇԱԼՈՅՍ ՏԷՐ-ՅՈՎՆԱՆԵԱՆՑ

# ԺԱՌԱՆԳԸ

---

*Այս փոքրիկ պատմուածքը նուիրում եմ ուստա Գէվօյին ու իր արժանաւոր ժառանգին։*

*Ո՞վ է նա.—երևի դուք հարց կը տաք, առանց մի փոքր անգամ ձեզ նեղութիւն տալ կամենալու։*

*Ձեր հարցին, սակայն, ես չեմ պատասխանի։*

*Մի՞թէ յանձնարարութեան կարօտ է նա, ուստա Գէվօն, որ մեզ նման սովորական մահկանացուներից մէկն է, հասարակ արհեստաւոր մարդ, միջակ կարողութեան տէր։*

*Բայց քաղաքի ամեն մի անկիւնում փորձեցէք ասել.*

*—Ուստա Գէվօ.*

*Այդքանն էլ բաւական է. նրանք իսկոյն կը հասկանան որ ձեր խօսքը խոշոր սև աչքերով, երկար կախ ընկած սպիտակած բեխերով, կենսուրախ, միշտ ժպիտ, բարձրահասակ ու արագաքայլ հիւսն վարպետ Գէորգի մասին է։*

*Եւ նրան ճանաչում էին ոչ թէ լաւ, հմուտ արհեստաւոր լինելու պատճառով միայն, այլ որ նա հալալ մարդ էր, ազնիւ՝ բնաւորութեամբ, ճշմարտախօս, յայտնի իր անբիծ ու արդար գործունէութեամբ, իսկ որ գլխաւորն է ուրախ ու զուարճախօս մարդ էր, վերին աստիճանի քաղաքավարի, համեստ և բարի։*

*Դեռ երիտասարդութեան օրերից նա կարողացել էր որոշ դիրք ու անուն վաստակել հասարակութեան մէջ։ Իր արհեստի խաղաղ աշխատանքի հետ համահաւասար, նա գիտէր նաև գործածել մահառիթ զէնքը, հմուտ ձիավար էր և լաւ գնդակաձիգ ու իր նմանների շրջանում միշտ էլ աչքի էր ընկնում։*

*Նրա հօրն ու մօրը շատերն էին երանի տալիս, որ այդպիսի զաւակ ունէին։ Շատերն էին խելքամաղ լինում նրա համար։*

*Եւ քանի ողջ էր նրա սիրուն Մարօն, իր կեանքի երիտասարդական վառ երազների ու խնդութիւնների հաւատարիմ*

ընկերը, աջողութիւնն էլ անբաժան կերպով ուղեկցում էր նրան և ժպտում։

Բայց հէնց որ մեռաւ Մարօն, ամէն ինչ տակն ու վրա եղաւ, բախտը սկսեց դաւաճանել նրան, երես դարձրեց նրանից։

Մարօն իր հետ միասին կարծես տարաւ տան խէր-բարաքեաթն էլ։

Ամենից առաջ ձեռքից գնաց հայրենական տունը, որտեղ նա ծնվել էր ու մեծացել, ընտանիք ստեղծել ու զաւակ մեծացրել։

Իսկ յետոյ արդէն՝ արհեստանոցը։ Նրա գործերը այնքան վատ գնացին, որ նա աւելի լաւ համարեց փակել նրան ու ապրել այն փշրանքներով, որ աջողութեան տարիներում յետ էր դրել սև օրերի համար։

Մի մինուճար տղայ ունէր նա միայն և ուրիշ ոչինչ. 18 տարին բոլորում էր արդէն. կատարեալ մօր տիպն էր իր արտաքինով։

Հօր ու որդու մէջն էլ շատ նմանութիւն կար. աշխոյժ էր չափազանց, բնաւորութեամբ ուրախ, ազնիւ ու բարի։

Բայց և այնպէս մեծ վիշտ ու հոգս էր պատճառում նա իր հօրը։

Պատրաստել տուեց Արամին, մտցրեց գիմնազիան, ծոյլ դուրս եկաւ ուսման մէջ, հազիւ հասաւ մինչև չորրորդ դասարան, ստիպուած եղաւ թերի թողնել, դուրս գալ դպրոցից։

Հայրը նրան դրեց իր արհեստանոցում, որպէս զի շարունակի իր արհեստը և պահպանի իր ստեղծած գործը։

Այդ էլ չեղաւ. մի տարի միայն մնաց արհեստանոցում և յամառ կերպով հրաժարվեց սովորել հօր արհեստը։

Այնուհետև նա ուտում էր, խմում ու ազատ ման գալիս իր համար, իսկ գործի մասին այլ ևս չէր էլ ուզում մտածել։

Ուստա Գէվօն մնացել էր շուարած. չգիտէր ինչ անել։ Չափազանց ծանր էր ազդում նրա վրայ որդու անհաստատամտութիւնը, պարապ ման գալը, ապագայի անորոշութիւնը։ Նրա ծնողական սիրտը ամեն անգամ կսկծում, մորմոքում էր, երբ ազգականներն ու մօտիկ ծանօթները խօսք էին բաց անում Արամի անգործութեան մասին։

Երբեմն էլ նրան ուղղակի կշտամբում էին՝ թէ նա չափազանց փափկասիրտ վերաբերմունք է ցոյց տալիս դէպի որդին և հէնց դրանով էլ փչացնում է նրան, պարապութեան սովորեցնում։

Ակնարկներով ուզում էին հասկացնել, որ պարապութիւ-

նը կարող է շեղել տղային ուղիղ հանապարհից ու նրա մէջ արատաւոր կողմեր առաջ բերել։

Այդ բոլորը լսում էր նա ու տանջվում ներքուստ։ Սակայն իր հոգու բոլոր յուզմունքն ու անհանգստութիւնը աշխատում էր թագցնել ուրիշներից։

Ո՞վ գիտէ ինչ սրտով, ինչ մտքով են մօտենում իրան։ Չէ՞ որ չարախինդ ու նախանձոտ մարդիկ, ուրիշների դժբախտութեան վրայ ծիծաղողները շատ շատ են աշխարհում։

Եւ որքան կարող էր անձամբ հետևում էր որդու ընթացքին, որպէս զի, գոնէ, պատէհ րօպէին հեռու պահէ նրան վտանգաւոր փորձութիւններից և վատ շրջաններից։

Միակ մխիթարութիւնը, որ նա կարողանում էր գտնել իր ծնողական սրտի համար ծերութեան օրերում, այդ այն էր, որ Արամը դեռ ևս ոչ մի վատ վարմունք, ոչ մի անպատուաբեր, արատաւոր արարք չէր թոյլ տուել իրան, փչանալու որ և է ախտերի նշան չէր ցոյց տալիս։

Շատ անգամ ծերունի հօր մէջ առկայծվում էին վաղեմի յոյսերը, երազում էր նա դարձեալ, որ կը գայ ժամանակ, երբ իր ալևոր գլուխը առանց կարմրելու կը յենի մինուճար զաւակի ուսերին. նա հալալ կաթնակեր զաւակ կը լինի իր համար։

Եւ ինքը պարզերես բոլորի առաջ կը պարծենայ իր զաւակով։

—Թող իմանան ամենքը, որ ազնիւ, հալալ-կաթնակեր ծնողներից վատ զաւակներ չեն ծնվում, որ առողջ ազնուարիւն ծնողների զաւակը իր ազնուարիւն լինելը ցոյց կը տայ ամեն տեղ, ամեն ժամանակ,—խօսում էր երբեմն ուստա Գէվօն ինքն իրա հետ մենակութեան մէջ այդ մտածմունքներով տարված։

Եւ մի՞ տխուր դէպք, հասարակական մի խոշոր աղէտ եկաւ վկայելու ուստա Գէվօյի այդ առողջ խորհրդածութիւնների արդարացի լինելը։

Ծննդեան տօներն էին։

Հազարաւոր ամբոխը ջերմեռանդութեամբ խռնվել էր Վանքի հանդէպ Քուռ գետի վրայով կառուցված հանդիսաւոր տախտակաշէն կամուրջի վրայ դիտելու Յորդանանի տեսարանը պատկերացնող եկեղեցական մկրտութեան հանդէսը։

Տասնեակ տարիներ առաջ էր. 1891 թուականը, երևի, դեռ ևս կենդանի է շատ շատերի յիշողութեան մէջ։ Անմոռանալի դժբախտ տարեմուտ էր։ Բիւրաւոր ամբոխի ծանրութեան տակ չդիմացաւ տախտակէ կամուրջը, յանկարծակի ճռնչիւնով խոր-

տակվեց և հարիւրաւոր մարդիկ թաղեց սառցասառ ջրի յորձանքների մէջ։

Սարսափահար ճիչերը, լացն ու օգնութեան աղաղակները թնդում էին չորս կողմից, հարիւրաւոր գլուխներ, ալիքների դէմ կռուելու անզօր ու անսովոր բազուկներ վեր էին բարձրանում ալիքներից դուրս աղերսում, օգնութիւն որոնում ու նորից սուզվում։ Օգնում էր ով կարող էր. անձնազոհ մարդիկ, կատաղի կռիւ էին մղում սառը կոհակների հետ խեղդվողներին մահից փրկելու համար։

Այդպիսիներից մէկն էլ պատանի Արամն էր. ուստա Գէվօյի որդին։ Հերոսական ջանքեր էր գործ դնում նա, դուրս էր հանում մէկին, նետվում դէպի միւսը, կարծես, երկաթէ բազուկներ ունենար նա, յոգնել չգիտէր։ Աղէկտուր գոռում-գոչումներից յուզված, գունատ դէմքով շտապում էր նա, առանց նկատելու շնորհակալութեան համար իրան մեկնվող ձեռքերը, դէպի այնտեղ, ուր այդ չարաբաստիկ ժամին գոյութեան կռուի վերջին օրհասական մաքառումներն էին մղում ալիքների դէմ անզօր խեղդվողները։

Ափերին խռնված բազմութեան միջից երախտագիտութեան և հիացմունքի բացականչութիւններ էին լսվում նրա հասցէին։—Ո՞վ է այդ ազնիւ, սրտոտ քաջ. տղան։—

Իբրև պատասխան այդ հարցերին բարձր ձայնով մի ուրիշը խրախուսում էր.

—Կեցցէ ուստա Գէվօյի տղան. Օրհնուի ձեր զարմը հա։ Մօրդ կաթը հալալ լինի քեզ։ Ապրես դու տղա։

Մինչ դեռ նա, յափշտակված իր փրկարար գործով, ոչինչ չէր լսում. 15-րդ մարդն էր ազատում ջրի յորձանքների միջից։

Աղէտի զոհերը ջրից արդէն դուրս էին հանել, որը մեռած, որը՝ կիսամեռ հեռացրել գետափից։

Ջրաթաթախ, յոգնած, աննկատելի կերպով Արամը վազուց ճեղքել ու անցել էր ամբոխի միջից դէպի տուն։

Հարիւրաւոր ընտանիքներում այդ օրը լաց ու շիվան էր։

Ուստա Գէվօն հաւասարապէս մասնակցում էր հասարակական աղէտի պատճառած վշտին։

Բայց նրա այդ վշտի միջից երևում էր մի լուսաւոր կէտ, որ ցնծութեամբ ու կորովով էր լցնում նրա սիրտը. այդ նրա յուսոյ աստղն էր, որ ծագում էր լուսաւորելու նրա ծերութեան օրերը, փարատելու նրա ներքին անհանգստութիւնն ու մտատանջութիւնները միմիակ որդու ապագայի մասին։

*Այդ լուսաւոր աստղը լաւ նշան էր նրա համար, որ բախտը, երկար տարիներից յետոյ, դարձեալ սկսում է ժպտալ նրան ու մխիթարել։*

*Հասարակական աղէտը և որդու անձնազոհութեան տուած օրինակը, որի մասին հիացմունքով խօսում էին ամբողջ քաղաքում, և ինքնաբաւականութեամբ լսում էր ինքն էլ, վերածնեց նրա մէջ տարիների առողջ յոյսն ու հաւատը, նրա ալևոր դէմքի վրայից սրբեց վշտի մռայլ խորշոմները, ու նա հաստատուն կերպով մնաց ապաւինած այն փրկարար համոզմունքին՝ թէ առողջ ու ազնիւ ծնողների զաւակները վերջ ի վերջոյ գնում են ժառանգութեան ընդգծած ճանապարհով, մնում են դարձեալ ազնուարիւն։*

*Այդ օրը կնոջ մահից յետոյ առաջին բաղդաւոր օրն էր ուստա Գէվօյի համար։*

*Մի շարք անփոխարինելի կորուստներից յետոյ, հասարակական խոշոր աղէտի հանդէպ կանգնած, նա իրան մխիթարված ու վարձատրված էր զգում նրանով, որ արժանաւոր ժառանգ ունէր։*

*Արամը իր ազնիւ ծնողների արժանաւոր ժառանգն էր։*

*Այդ հաւատով ուստա Գէվօն կարող էր գերեզման իջնել որովհետև նրա ընտանեկան կեանքը ունէր իր արժանավայել շարունակութիւնը։*

Լ. ԴԱՆԻԷԼԵԱՆ

# ՆՈՒԷՐ
# ՀԱՅ ԲԱՆԱՀԻՒՍԻՆ

---

## *Լրջութեան կտակը*

Գնահատութիւնը մի օր
Երկրի վըրայ քաշ գալիս,
Պատահում է Հանճարին,
Գըրգլեակի տակ ծածկուած.

—Հանճա՛ր, ողջոյն,—ասում է.—
Ծակոտկէնիդ նայելով
Պիտի այնպէս համարենք,
Որ դու բեռն ես աւելորդ՝
Ծով նետելու արժանի։

—Այո՛, իրաւ. առանց ինձ
Աւելի հեշտ կը լինէր
Թեթև կըտրել ճանապարհ։
Այն կարծիքի են մարդիկ,
Որ՛ ես անպէտք մի բան եմ
Ոսկին դիզելու խընդրում,
Թէև Հերմէս տըրաքուի
Հակառակը պընդելում։
Սակայն ասա, դու ի՞նչպէս
Ինձ ճանաչել կարացիր
Իմ այս արդուզարդի մէջ։

Աչքերըդ լաւ սըրհայեաց
Պիտի անշուշտ լինէին՝
Կարկտաններիս միջովը
Ներսը մի բան տեսնելու։

—Եւ արդարև շատ դըժուար
Կը լինէր քեզ ճանաչել
Առանց քո այդ շորերին,
Որոնք աչքիս ընկան շատ։
Որովհետև անցնելով
Լայն փողանը ծայր ի ծայր՝
Նա ինձ այնպէս երևաց
Իբրը լինէր մի վանդակ
Ծոխափետուր հաւերով.
Ով ամենից թեթևն էր
Իւր ուղեղի կըշիռով,
Նա աւելի պերճ հագած
Նազում էր մեծ պըչրանքով։

—Թէ Ռէնտգէնի ճըրագով
Լուսենք խօսքիդ կեղևը,
Ներշանն որով, սիրելիս,
Մարդիկ ինձ պիտ՛ ճանաչեն,
Մուրիկի այս քուրջըն է։
Օ՜, Արև՛ը. ինչ փարթամ
Ծիրանի է ուսերիս
Աստուածներից պարգևած։
Ասա՛ սակայն, աղաչեմ.
Որովհետև դու գիտես
Մարդու՛ն մարդից տարբերել,
Գնահատութիւնը չե՞ս դու։

—Մատըդ վըրան դըրիր. ինկ։

—Ասում են որ կաղեր կան
Աստուածների մէջ անգամ։

—Հեփեստոսը առաջին,
Արամազդի դարբինը.
Ուստի Արէսն արագոտն
Ժամանակ էր գտնում միշտ
Գրկել նորա կնոջը՝
Գօտէձարձակ Աստղիկին,
Սորա փափուկ անկողնում։

—Նոյն և Նըման, ինչպէս որ
Յառաջում է քան ըզքեզ
Աղքատութի՜ւնն, և Մա՜հն իսկ,
Տրորել իւր ճանկերում
Նորան՝ որին դու Հանճար
Անունով ես մեծարում։
Սրտիս խորքից ընդունիր
Սիրոյս անկեղծ հաւատիքն
Անգին ողջոյնիդ համար։
Բայց, զի գագաթիս վրայ
Ձիւնը ճերմակ նստած կայ,
Որին արդէն հալեցնել
Ճար ու ճարակ էլ չունիս,
Եւ ոչ կապերը բանալ
Պաղած պըրծած երակիս,
Ճառագայթներըդ պահիր
Շիրմիս վրայ ցոլացնես։
Մեռնելուց յետ սիրելը
Ճակատիդ վրայ եմ կարդում։
Շատ լաւ. անցիր, աղաչեմ,
Եւ հոգ տար՝ որ պըսակներ
Դագաղիս վրայ պատրաստեն։

Ա. Մ. ԵԶԵԿԵԱՆ

# ԿԱՐԱ-ՕՂԼՈՒ *)

## (Հայ ապստամբի մը կեանքէն)

---

### ԳԻՐՔ Ա.

### VII

### Երազներու քաղաքը

*Միս Ուիլսըն օրուան հերոսուհին էր։ Տարիքոտ, ճշմարիտ, այսուհանդերձ, դեռ ևս հերոսական։ Նոյն իսկ պատուեց բրիտանական հիւպատոսը տեսակցութիւնով մը այն շիշի երեւոյթով փայտաշէն հաստատութեան մէջ՝ որ հիւպատոսարանի դեր կը կատարէ Թէրապիա, նա և Հայկական հարցով հետաքրքրելու ուխտեալ դիտումով։ Հիւպատոսը, միս Ուիլսընի երիտասարդական տարազին առթած շօքէն, յայտարարեց որ աւազակութիւնը պէտք էր կաշկանդուիլ Հայաստան, և թէ Բարձրագոյն Դուռը պարտաւոր էր տուժել վնասը՝ կարգը չը կրնալ պահելուն համար հոն։ Անշուշտ, բան մը չէր կրնար ընել ինք, ըլլալով էն Ամերիկեան հպատակ մը. սակայն և այնպէս, մեծապէս կը շահագրգռուէր իր այնքան աներկիւղօրէն տոկացած վտանգներով, ու զինքը իր սեռին պատիւ մը կը նկատէր։ Բարձրագոյն Դուռը, երբ հարց դրուեցաւ Ամերիկեան մինիստրին կողմէ այդ խնդրին վերաբերմամբ, պատասխանեց թէ ապացոյց չկար կորսուած գումարի քանակութեան մասին, բայց որ, եթէ կրնար այդ բանը գոհացում պատճառել միս Ուիլսընի, մեծ դժուարութիւն չկար Կարա Օղլուն բռնելու և գլուխը կըտրելուն մէջ։ Առաւելաբար, խոստացան լաւ մը աղջրտել և զրկել միս Ուիլսընի մշտնջենապէս պահելու համար։ Միս Ուիլսըն սարսռաց, ու յայտարարեց թէ վրէժխնդրութեան կամ*

---

*) «Արօր» № № 6—7, 8—9—10, 11, 12—1910 թ.

այդպիսի յիշատակի մը կարօտութիւն չունէր։ Պր. Օգլու խիստ քաղաքավարի էր գտնուած. իր ձեւերը պարզապէս կատարեալ էին ու բոլոր խնդիրը անտեղիօրէն չափազանցուած էր իր ընկերակիցներուն անակնկալ փախուստով։ Ինք կը պնդէր նըկատել քակէն յափշտակումը իբրև ժամանակաւոր փոխատուութիւն մը գերազանցապէս շնորհալի ճէնթլմէնի մը, որ ճշմարիտ հայրենասէր մըն էր և սերտօրէն կապուած Տիգրանի ընտանեաց, մէկը՝ որ առեն մը Հայաստանի ժողովուրդը կը կառավարէր։ Ուստի և խնդիրը մէկ կողմ դրուեցաւ։ The «Levant Herald» թերթը գծագրիչ մը ղրկեց միս Ուիլսընի նկարը առնելու, բայց սա երբ տեսաւ գինքը, գծագրութեան մատիտները բերել պատրուակելով՝ անգամ մը ևս չը վերադարձաւ։ Պոլսոյ Անգլիացի բնակիչներէն ոմանք պատմութեան ճշգրիտ մանրամասնութեանց տեղեկացան Երասդոսէ։ Երբ իմացան թէ ինչ պատահած էր իսկապէս, Ֆէնէլա նկատուեցաւ համեստ ու անփքուն հերոսուհի մը, միս Ուիլսընի ժողովրդականութիւնը ոչնչութեան յանգեցաւ, ու իր պրէստիժը միսիոնարական շըրջանակներուն մէջ, որ հսկայական եղած չէր երբէք, զգալիօրէն նուազեցաւ։

Երասդոս, փոխանակ Սվազ ծնողաց վերադառնալու։ Ֆէնէլայի հետ եկաւ Պոլիս։ Շոգենաւէն Անգլիա մեկնելուն երեքչորս նախընթաց օրերը սովորութիւն մը ըրած էր «Լէվընդ Հէրըլտ»ի խմբագրութիւնը այցելել, այդ աշխարհամբաւ թերթին՝ որ, պր. Էտկըր Ուիթէքըրի խմբագրութեամբ, թէպէտ և կը ճնշուէր մշտապէս Թիւրք կառավարութեան կողմէ, Անտէոսի նման կը բարձրանար կրկին վերանորոգուած եռանդով։ Անշուշտ իւրաքանչիւր դադարման անունը կը փոխէր. սակայն բաժանորդները, ստանալով թերթ մը որ և է ձևի տակ, շատ փոյթ չէին ըներ անունին փոփոխման անկարևոր կէտը։ Նոյն տըպագրական մելանին հոտը ճակատագրական հրապոյր մը ունեցաւ Երասդոսի և գինքը մոգական աշխարհ մը թռցուց։ Ենթա-խմբագրին թելադրանքով՝ համառօտ յօդուած մը գրած էր Հայաստանի մէջ գործուած աւազակութեանց վրայ։ Յօդուածը իր ժամանակին երևցաւ ու մեծ ուշադրութեան գրաւեց։ Որպէս յաւելումն տեղական քաղաքական խնդրոց ծանօթութեան, Երասդոս տիրացած էր նոյնպէս մի քանի Արևելեան լեզուներու։ Շոգենաւի բաժանման օրը եկաւ Ֆէնէլայի ու զուարթ դէմքով մը.

— Ո՛հ, Ֆէն,— հեւաց,— ի՛նչ կը կարծես պատահեցաւ։

— Լաւ բան մըն է,— հարցուց Ֆէնէլա։

Շատ տրտում էր աղջիկը։ Քանի կը մօտենար Անգլիոյ

այնքան կը պժգար իրեն սպասող բախտէն։ Ի՛նչ եղանակով ալ նայէր վրան, հեռանկարը հիւրընկալ բան մը չունէր երբէք։

—Տուն գրեցի այդ մասին,—յայտարարեց Երասդոս։ Կարծեմ հրաշալի է։

—Ինչի՞ մասին։ Ի՞նչ բան է հրաշալին։ Բացատրէ ինքզինքդ, Րասդոս։

—Ի՛նչ, պաշտօն մը առաջարկեցին ինծի «Լէվընդ Հէրըլտի» խմբագրութեան մէջ։ Ենթա-խմբագիրը ընտիր մէկն է։ Կըսէ թէ երիտասարդի մը կարօտութիւն ունի, որպէս զի գլխաւորին ներկայացնէ։ Իր ներկայ օգնականը զզուելի մէկն է, շնորհալիութենէ զուրկ։ Երբ մեր արկածները պատմեցի ենթա-խմբագրին, ըսաւ թէ շուտով կրնար ինծի ձեւի մը բերել։ Ուստի և տուն գրեցի այդ մասին։ Այդ միակ բանն է՝ որուն ընդունակ եմ, կրնամ մի քիչ ձափռաել։

Ջէնէլա մեծապէս գոհ մնաց։

—Վսեմ ու սրբազան կոչում մըն է միսիօնար լինել,—ըսաւ.—Բայց այդ նոյնպէս մասնաւոր յատկութիւններ կը պահանջէ։ Ա՛րդ, չեմ կարծեր թէ դու ունիս այդ մասնաւոր յատկութիւնները, ու սխալ պիտի ըլլայ այդպիսի կոչում մը ընդգրկել՝ եթէ ինքզինքդ յարմար չես զգար ատոր։ Գիտես թէ դու Հայերը բաւականաչափ չես սիրեր՝ որպէս զի զանոնք դարձնել ճգնիս։

—Ատի մեծ յուսախաբութիւն պիտի պատճառէ իմիններուս,—վրայ բերաւ Երասդոս համոզուած.—բայց ինծմէ անկախ է։ Ես ալ միս Ուիլսընի չափ անյարմար եմ միսիօնար լինելու։ Մեր մէջ տարբերութիւնը այն է որ ես գտած եմ այդ ճշմարտութիւնը, մինչ էն դեռ ո՛չ։

—Ուրիշներ ալ գտած են որ միսիօնարուհի ըլլալու չէր էն,—յարեց Ջէնէլա հանդարտօրէն։—Միս Ուիլսըն Ամերիկա կը վերադառնայ կոր։ Իր պարտականութիւնը կը համարէ Հայաստանի վրայ դասախօսել։ Բաւական ցաւալի է դա Հայաստանի համար. սակայն պէտք եղածին չափ բարոյական արիութիւն ունեցող մը չկայ՝ որպէս զի ետ կեցնէ զինքը այդ քայլէն, և հետևաբար Հայաստան պիտի դասախօսուի,—խե՜ղճ տարաբախտ ազգ։

—Խե՜ղճ Հայաստան... Կարծես թէ Թիւրքերուն ձեռքը կրած տառապանքները բաւական չէին։ Շատ կը բաղձայի ունկնդիրներուն մէջ գտնուիլ,—յայտնեց Երասդոս։—Կրնայի ոտքի ելնել ու շատ անհաճոյ հարցումներ ուղղել։ Մասնաւորապէս զիս տեսնել կուզէ։ Գիտե՞ս ինչու։

Ֆէնէլա զարմացաւ։

—Ո՛չ, Ռասդոս, չեմ գիտեր։ Ես կը կարծէի թէ բաւական յոգնած է մեր երկուքէն։ Սակայն ահա կուգայ ինք։ Ձեզ առանձին կը թողում։

Ու Ֆէնէլա թողուց սենեակը՝ ճանապարհորդութեան պատրաստուելու համար։

—Զի՞ս կուզէիք, միս Ուիլսըն, հարցուց Երասդոս։ Պէտք է Ֆէնէլայի իրեղէնները անմիջապէս շոգենաւ տանիմ։ Ժամէ մը ճամբայ կելնէ շոգենաւը։

—Մի՛շտ Ֆէնէլա... գոչեց միս Ուիլսըն։—Յիրաւի, Երասդոս, երբ այսպիսի էական լուրեր ունիմ քեզ հաղորդելու, կրնայիր մի քիչ աւելի քաղաքավար ըլլալ։

Երասդոս նստաւ տհաճութեամբ։

—Շատ լաւ, միս Ուիլսըն, ի՞նչ է։

Միս Ուիլսըն կակազեց.

—Ես... ես չը պիտի վերադառնամ Սվազ, Երասդոս։ Օգտակարութեան աւելի լայն ասպարէզ մըն եմ կանչուած։

—Ճի՞շտ,—հարցուց Երասդոս, բոլորովին գիտակից որ դէմինը մեծափափաք կսպասէր այդ մասին հարցուփորձուելու, և ինք ևս դիտմամբ խոյս տալով այդ բանէն։

—Ճի՞շդ։ Կամուսնանա՞ք կոր։

Միս Ուիլսըն արհամարհեց այդպիսի փուճ հարցման մը պատասխանել։

—Կարծեմ, Երասդո՛ս, դու զգացած չես ընաւ՝ թէ ինչպիսի արտակարգ բան մըն է ճակատագիրը։

Երասդոս յայտնեց թէ մինչև այդ ատեն ժամանակ ունեցած չէր իրերու փոփոխականութեան վրայ խոկալու։

—Լաւ, Երասդոս,—շարունակեց միս Ուիլսըն,—կուզեմ որ փոքրիկ յանձնարարութիւն մը կատարես ինձ համար։

—Սիրով, եթէ երբէք կրնամ։

Երասդոս նեղուած կզգար։ Կը փափաքէր մի քանի վերջին խօսք ալ ընել Ֆէնէլայի հետ։ Միս Ուիլսըն ինչո՞ւ ըսելիքին չէր գար։

—Սա է, Երասդոս։ Դու երիտասարդ ես, և խանդավառ ու խիզախ։ Մեր պր. Օլլուի հետ հանդիպման աճապարանքի և յուզման պահուն՝ անարդարութիւն մը գործեցիր դէմը։

—Ատրճանակո՞վ ըսել կուզէք,—հարցուց Երասդոս, գլխահակ էնոր ունկնդրելով։ Միս Ուիլսըն մեծապէս իր մտածումներով էր զբաղուած՝ որպէս զի երիտասարդին արտայայտութիւնը նշմարէր։—Վախնամ թէ լոկ փախցուցի զինքը։ Պէտք

էր փոքր ինչ աւելի ուղիղ թիրախել։

Միս Ուիլսըն վարանեցաւ։

—Կուզեմ որ, Երասդոս, երբ վերադառնաս Հայաստան, գտնես զինքը, և վստահեցնես թէ՝ եթէ երբեք գայ ժամանակ և ինք իր գահը վերստանայ (ինծի յայտնեց որ իր նախահայրերը Ջրհեղեղէն առաջ Հայաստանի թագաւորներ էին եղած) ոչ մէկը ինձ չափ երջանիկ պիտի զգայ։ Ըսէ իրեն որ թող իւր հպարտ հոգին չը նեղուի այն... չնչին բանին համար՝ որ պարտաւորուած էր փոխ առնել իր յափշտակիչ հետևորդներուն սիրոյն։ Կը կատարես այս խնդիրքը, այնպէս չէ՞,—աւելցուց փաղաքշանքով։—Շատ անհեթեթ էր այդպիսի շտապով փախչել։ Կարևոր գործեր զիս հոս Ամերիկա կը կանչեն, և թերևս իրարու չը հանդիպենք վերստին։

Երասդոս կորսնցուց իր հաւասարակշռութիւնը։

—Անկիրթ ըլլալ չեմ ուզեր, միս Ուիլսըն, սակայն գիտէ՞ք թէ ինչպիսի մէկու մը կը ղրկէք այս լուրը։ Անշուշտ չէք գիտեր, ապա թէ ոչ զայն ղրկելու չափ յիմար չէիք լինէր։ Աւելի կսպաննէի Ֆէնէլան քան թէ իր ձեռքը թողնէի։ Ա՛րդ, կը հասկնա՞ք։

—Ունայնախօսութի՛ւն,—գոչեց միս Ուիլսըն թերահաւատօրէն։—Ան մեծապէս քաղաքավարի էր։

—Այդպէ՞ս է։=Երասդոս զզուել ու յոգնիլ սկսաւ էնոր տխմար սնափառութենէն։—Գիտէ՞ք թէ ինչ անուանեց ձեզ։

—Ամերիկեան հուրի մը,—ժպտեցաւ միս Ուիլսըն։

—Ըսաւ թէ «պառաւած հաւ» մըն էիք,—պատասխանեց Երասդոս անգութ բացորոշութիւնով։—Ա՛րդ, ձեր այս աւետիսը տանե՞մ իրեն։

—Ո՛չ,—մրմնջեց միս Ուիլսըն, դէմքը ափերուն մէջ ծածկելով ու աթոռի մը մէջ ընկղմելով։ — Ո՛չ թէ որովհետև կը հաւատամ—ադի լեզուին թերի գիտակցութեան արդիւնքն է—այլ չեմ ուզեր որ ան վիրաւորուի, իր հպարտ հոգին ճմլուի այս... այսպիսի թելադրանքով մը։ Ես ոևէ պարագայի տակ չը պիտի սխալէի իր խօսքին իսկական իմաստը։

Ֆէնէլա ներս մտաւ, պատրաստ մեկնումի, ու համբուրեց միս Ուիլսընը, որ դեռ ևս կծկուած էր տեղը։

—Ի՞նչ կայ,—հարցուց։—Լաւ չէ՞ք, միս Ուիլսըն։

Միս Ուիլսըն փոխադարձաբար համբուրեց զինի։

—Ոչի՛նչ, սիրելիս, ոչի՛նչ,—յայտարարեց ան։—Միայն թէ, Երասդոս յիմարօրէն նախանձոտ է խեղճ պր. Օղլուի մասին։

Կը յուսամ շուտով Անգլիա եւ դասախօսել և կուգամ քեզ տեսնելու։ Երթաս բարո՜վ...

Երասդոս լուռ էր, երբ Ոսկեհորթէն Մեսաժըրի-ի շոգենաւը կը նաւարկէին։

—Երազային քաղաքի մը կը նմանի, — ըսաւ Ֆէնէլա, դառնալով՝ ս. Սոֆիայի պերճ մինարէներուն նայելու։

Երասդոս վար դրաւ ծրարները։ Ժամանակ չունէր այն երազային քաղաքը դիտելու. իր սեպհական երազը իր սրտին շատ մօտիկ էր՝ որպէս զի ուրիշի մը վրայ մտածէր։ Երիտասարդը խիստ դժգոյն էր։

—Ֆէն, սիրելիս,—ըսաւ, սիրտը ուժգին բաբախելով,— Ֆէն, սիրելիս, ուրիշ կերպ պիտի չըլլա՛յ երբէք։ Պիտի չըլլա՛յ երբէք ոսկեղէն երազներու քաղաք մը մեզ համար։

Ֆէնէլա չհասկցաւ, թէպէտև դէմքը փոքր ինչ գունաւորուեցաւ։

—Վերադառնալու եմ ես երազներու քաղաքը... առանձին։

Ապա ամեն ինչ պարզուեցաւ աղջկան։

—Ի՞նչ կրնամ ըսել, Րասդո՛ս։ Ի՞նչ կրնամ ըսել։ Մեծապէս կը ցաւիմ։ Մեծապէս, մեծապէս կը ցաւիմ, բայց, չեմ կրնար... չեմ... հասկնար...

Պատանին անվստահ էր ինքզինքին վրայ՝ խօսելու։

—Զիս անսիրտ մի՛ նկատեր, Րասդո՛ս,—պաղատեցաւ օրիորդը մեղմ, քաղցր ձայնով։—Զիս անսիրտ մի՛ համարեր, սիրելի՛ս, բայց...

—Հիմա չպիտի խնդրեմ պատասխանդ, — ըսաւ անհանդարտօրէն։—Օր մը նորէն պիտի հարցնեմ քեզ, Ֆէն։ Օր մը, թերևս, դուն ալ ինձի պէս զգաս։ Երբ մէկը անգամ մը կը սիրէ, ատի մշտնջենական է, Ֆէն։ Մշտնջենական..,

Կեանքին մէջ երրորդ անգամը ըլլալով՝ օրիորդը համբուրեց զայն, իր սիրուն աչքերը անորինին սևեռած։ Բայց դա կրքէ զուրկ համբոյրն էր՝ եղբօրմէն բաժնուող քրոջ մը։— «Մնաս բարեա՛ւ, սիրելի Րասդոս, ըսաւ, երբ նաւը պատրաստուել սկսաւ. Մնաս բարեա՛ւ, սիրելիս։ Ես պէտք է բեռս առանձին կրեմ։ Ոսկեղէն երազներու քաղաք չկայ ինձ համար...»

Արտակարգ տխրութիւն մը եկաւ վրան։ Փղձկեցաւ արցունքի, կոչելով երիտասարդը եղբայր մը, ու օրհնելով զայն իր հաւատարիմ սիրոյն և ծառայութեան համար։ Հսկայ նաւը դէպի հեռուն փութալ սկսաւ։ Շոգենաւին աներևոյթանալէն դեռ շատ վերջ, Երասդոս, համբերատար կանգնած՝ կը դիտէր ծովափէն։ Ապա դարձաւ ու Ոսկեղէն Քաղաքը բարձրացաւ։

Սակայն ճամբան զառիվեր էր, աղտեղութիւնով դիզուած ու ոտնքացող շուներ քայլերուն կը հանդիպէին։

Կաղեր, անդամահատեալներ ու կոյրեր գթութիւն կը հայցէին իրմէ, երբ գլխահակ ու սրտաբեկ՝ բարձր տուներու մէջէն կանցնէր։ Ու մինչ կը բարձրանար, իրեն այնպէս թուեցաւ որ Համբաւը բլուրին գագաթն էր կանգնած, բազկատարած, դափնիներու ծաղկեփունջ մը բռնած։ Պահ մը դիտեց ճնոր գեղանի պատկերը։ Ապա աներևոյթացաւ էն։

Երասդոս ուսերը թօթուեց և շարունակեց ճամբան։ Ան սովրած էր թէ կայ բան մը՝ աւելի քաղցր քան Համբաւը, աւելի սիրուն քան կեանքը, աւելի արբշիռ քան Հաճոյքը։ Ֆէնէլա ևս պիտի սորվէ՞ր այդ երբէք։ Բայց Ֆէնէլա շատ հեռու էր ու կարող չէր պատասխանել իր հարցումին—տակաւին։ Միայնակ բարձրացաւ Երազներու քաղաքը, որ կլանեց զինքը ևս՝ ինչպէս որ կլանած էր շատ մը ուրիշ սիրահարներ ալ՝ անցեալին մէջ—սիրահարներ՝ որոնք բացած էին իրենց ճանապարհը դէպի համբաւ՝ սուրով՝ փոխան գրչի։

---

## ԳԻՐՔ Բ.

### I

### Կոյր բանաստեղծը

—Չեմ կրնար մտաբերել թէ ո՞վ կը յիշեցնէք զիս,—ըսաւ Ֆէնէլա, այլայլած շեշտով, երբ պր. Ճօզէֆ Պլէք, բովանդակ Լեվրփուլը տիրացողի եղանակով մը, շնորհալիօրէն գլխարկը բարձրացուց և օրիորդին բազմաթիւ ծրարներէ մին կառքին վրայ զետեղեց։ Ֆէնէլա շատոնց ի վեր որդեգրած էր իրեղէնները կոկիկ ծրարներու մէջ թխելու ունակութիւնը՝ որով հնար էր առանց դժուարութեան ջորիի մը կռնակը նետել։

Ճօզէֆ Պլէք ժպտեցաւ, ու ժպիտը Ճօզէֆ Պլէքի ժպիտն էր, թէպէտև աչքերը Կարա Օղլուի աչքերն էին։

—Օ՜, ես անգլիացի հայ մըն եմ, ինչպէս գիտէք, միս Ֆրօմ. և բոլոր հայերը, անգլիացի թէ այլապէս, շատ իրար կը նմանին։ Մենք չենք կրնար մեր ցեղային մասնայատկութիւնները թողուլ, եթէ նոյն իսկ Օքսֆորտ ալ երթանք։ Օքսֆորտ

իր կրցածը կընէ մեզ համար, տեսակ մը հպարտանքով․ բայց մենք շուտով կը ձևափոխուինք ու կը բարեփոխուինք։

—Սակայն,—պնդեց Ֆէնէլա, խնամոտաբար թաղիք մը պարփակելով շուրջը (հայ ցեղի հաւանական բարեփոխման վերացական հարցերը չէին զբաղեցներ զինքը),—անշուշտ եմ որ ձեզ տեսած եմ առաջ։ Ձեր ձայնը, նոյն իսկ, արտակարգօրէն ընտանի է ինձ։

—Շատ կարելի է Պոլիս՝ ճամբայ ելնելէ առաջ, — վրայ բերաւ Կարա Օղլու, alias, Ճօզէֆ Պլէք։—Վախնամ թէ փոքր ինչ պոռացի այդ թշուառական աշխատաւորներուն․ իրեղէններուս մեծ մասը քարափին վրայ կը թողնէին։ Մտածեցի, հակառակ վտանգին, Պոլիս իջնել, տեսնելու թէ հօրս մարդոցմէն ոևէ մէկը ողջ մնացա՞ծ էր։ Օքսֆորտը զիս այնքան փոխած էր՝ որ իբրև հայ մը ճանչցուելու վախն ալ չունէի։

—Ու բարեկամներնիդ ուրախացա՞ն ձեզ տեսնելով,—հարցուց Ֆէնէլա համակրանքով։

Ճօզէֆ Պլէք նշանակալից թօթուում մը գործեց ուսերու։

—Բոլորն ալ «սրբուած» էին շնորհիւ Ապտիւլ անիծեալին... Տունէն քար մը իսկ մնացած չէր։ Լաւ է որ երկար չը մնացի, ապա թէ ոչ անխոհեմ արարք մը կը գործէի, և շատ հաւանականօրէն միևնոյն բաղդին արժանանայի։ Այս պահուս, Հա...

Մէկէն ընդհատեց։ Հայ քօմիթէն վեց ամիս ևս ժամանակամիջոց շնորհած էր իրեն տղամանդները գտնելու։ Վեց ամիս Անգլիա՝ մեծ բան էր Կարա Օղլուի։ Բայց, այժմ, բոլորովին սիրահարուած Ֆէնէլայի՝ որոշած չէր ինչ ընելը։ Իրեն այնպէս կը թուէր որ, գալիք վեց ամիսը կը պարունակէր յուզիչ հաւանականութիւններ—թալանի, սպանութեան և մարդասպանութեան։

—Թոյլ պիտի տաք ինձ անշուշտ գիտնալ՝ թէ ո՞ւր կրնամ ձեզ այցելելու հաճոյքն ունենալ,—հարցուց ան մետաքսային ձայնով մը—ձայն մը՝ որ գլխովին տարբեր էր Կարա Օղլուի գրգռուած ձայնէն։—Այնպիսի գերընտիր հաճելի ճամբորդութիւն մը ունեցանք, որ պիտի չուզէի կորսնցնել ձեզ։

Եւ կատարելապէս ճշմարիտ էր։

—Ես Պինկըլըդըն կոչուած տեղ մը կերթամ,—պատասխանեց Ֆէնէլա, վշտահար թօնով։—Յիրաւի մեծապէս ազնուութիւն մըն է ձեր կողմէն՝ զիս նորէն տեսնել փափաքիլ, սակայն ես իմ տիրուհիս պիտի չըլլամ հոն, և...

—Ո՜հ, բայց ես պիտի գամ,—ըսաւ ան վստահօրէն։ Այո,

ձեր կարծածէն աւելի պիտի տեսնէք զիս։ Ես…

—Սանդուխէն վար իջէք, պարոն, եթէ չէք ուզեր դիակի մը փոխուիլ,—գոչեց կառուղիղը· ու Ֆէնէլա այսպէսով փրկուեցաւ բացատրումի շփոթումէն՝ որ միս Թրէսօք, շատ հաւանականօրէն, թերևս թոյլ չը տար որ և է այցելու ընդունիլ։

Երբ երկաթուղին թողուց Լիվրփուլ՝ Մանչէստրի համար, օրիորդը բարձրացուց պատուհանը և սկսաւ դուրսի անձրևը դիտել յուսահատօրէն։ Անգլիան խորթ երևոյթ մը ունէր, իր Արևելք երկար կենցաղավարութենէն վերջ։ Ու ի՜նչպիսի սրտակտոր, աղտոտ տեղ մըն էր Լիվրփուլ, իր գորշ երկնակամարով, մթազգեստ մարդոցմով և կիներով, սև, բարձր վաճառատուներով, շոգենաւային գրասենեակներով, խոժոռ պատերով, խոշոր բամպակաբեռն սայլերով, լքուած գաղթականներու խաժամուժներով՝ որոնք իրենց ցաւերը խմիչքի մէջ կը խեղդէին, կեղտոտ իրլանդացի մուրացիկներով (միակ մարդիկը՛ որ աճապարանքի մէջ չէին) և սիգապանծ ոստիկաններով։ Այս բոլորը զուրկ էին գունագեղութենէ և ջերմութենէ—այն խանդավառ գունագեղութիւնը՝ որ կը գտնուի Պոլսոյ իւրաքանչիւր փողոցի անկիւնը, ուր տղայք, դրանց մէջ խաղալով, ծաղիկներու չափ գեղեցիկ են, որոնց բոլորին վրայ կը տարածուի Արևելեան երկնքի կապոյտ օրհնութիւնը։ Տեղւոյն անդադար շարժունութիւնն ու իրարանցումը նեղեցին Ֆէնէլան, և ուրախ էր խոյս տալ ատոնցմէ՝ երբ երրորդ կարգի կառք մը նստած՝ երկաթուղին ճամբայ ելաւ դէպի Պինկըլթըն։ Նախ, որոշեց հեռագիր մը ղրկել միս Թրէսօքի՝ իր ժամանումը աւետող։ Ապա մտաբերեց որ միս Թրէսօքի հոգը չէր թէ՝ հասած էր կամ ոչ։ Հեռագիր քաշել՝ պիտի նշանակէր թէ բարի գալուստ կակնկալէր։ Ու միս Թրէսօք պարզօրէն յայտնած էր նամակին մէջ որ Ֆէնէլա արժանաւորութիւն չունէր բարիգալուստի։ Հօրը մեղքերը պիտի հատուցուէր մանկան վրայ այնպիսի ձևով մը՝ որ քինախնդիր մարդիկ երևակայեն թէ արդարութիւն է, բոլորովին մոռնալով որ անմեղ աղջիկ մը չարչրել՝ որովհետև ժամանակին հօրը հաճոյ թուած է ինքզինքը զուարճացնել՝ ամենամեծ անարդարութիւնն է։ Ֆէնէլա նոյնպէս վախցաւ թէ՝ միս Թրէսօք հաւանականաբար առանձին կառք մը կը պահէր իրեն համար, սակայն իրաւացի չէր որ ատի տրամադրուէր Ֆէնէլա Ֆրօմի, որ, եթէ իրերու կացութեան վրայ զգացում ունէր, պարտ էր մօտենար միս Թրէսօքի միջնադարեան ապաշաւուհիի մը պատանքով պարուրուած։

Ֆէնէլա ոտքերը բարձրացուց տաք ջուրի թիթեղատու-

փին վրայէն ու նորէն պատուհանէն դուրս նայեցաւ՝ դաշտի անասունները դիտելու։ Տաժանահար ձիեր կանգնած էին՝ պոչերնին սրունգներնուն մէջ կծկած, ու կռնակնին անձրեւին դարձուցած, կարծես օրուան աշխատանքէն խուսափելու տենչով, թէպէտ և մօտեցող գիշերը առաւել գթասիրտ պիտի չը լինէր իրենց հանդէպ։ Համր փիլիսոփայութիւն մը կար խեղճ անասուններուն թշուառութեան վրայ՝ որ հզօրապէս դիմում կընէր Ֆէնէլայի։ Միտում մը զգաց դուրս ելնել կառքէն ու անոնց քով կանգնիլ, որպէս զի այժմէն վարժուէր դժբախտութեան տոկալու։ Քանի անձրեւը խտացաւ, ամէն ինչ աւելի միգապատ աղօտ ու անորոշ դարձաւ։ Ցաւահար երկինքը իր ապերջանիկ բաղդը կողբար, ու իր եռանդը զէռօյի իջաւ։ Սակայն այս տրամադրութիւնը երկար չը տեւեց, քանզի, յետադիմական մէկ բնական ընթացքով մը, այնպէս զգաց՝ որպէս թէ բաղդի ամենայետին խաւին էր իջած։ Նոյն օդը անգամ ատկէ յոռի չէր կրնար ըլլալ, ու թերեւս բարեփոխուէր։ Իր երկարաշունչ հառաչը փոխուեցաւ ժպիտի, և դառնալով պատուհանէն, նայեցաւ կառքի միւս միակ նստողին, քառասունի մօտ անձ մը, երկար պեխերով ու բաց-գոյն մօրուքով։ Դրած էր Թէնիսօնեան գըլխարկ մը և իր երազուն դէմքը առաստաղի կեդրոնէն կախուած ելեքտրական լոյսին յառած։ Ֆէնէլա նշմարած էր զայն՝ կառուղիղը զինքը կառքէն ներս օգնած պահուն՝ Լիվըրփուլ, ոգեւորուած խօսակցութենէ մը յետոյ։—«Աս երրորդ է լոկ, տէր իմ. իսկ դուք առաջին կարգի տոմսակ ունիք, կըսէր ան. իրաւունք չէ առաջին կարգի տոմսակով երրորդ մտնել. ընկերութիւնը չը սիրեր այդ. ատի նախատինք մըն է իրեն համար։

—Հոգս չէ, պատասխանած էր օտարականը։—Ես կը նախընտրեմ՝ անձրեւին տակ վազվռտելու փոխարէն՝ հոս մտնել։ Չէ՞մ կրնար ուզածս ընել, հէ՞։

—Անշուշտ, տէր իմ,- յայտնած էր կառուղիղը.—միայն թէ, եթէ ես ձեր...

—Բայց ատի ֆիզիքական անկարելիութիւն մըն է։ Դուն զիս չես, և ո՛չ ալ պիտի ըլլաս երբեք։ Ես հոս պիտի մնամ։ Եթէ ընկերութեան հաճելի չէ այդ, կրնայ ճանապարհածախսիս աւելորդ մասը ետ վճարել ինձ։

Ու իր խօսքը իր գործին յարմարցուցած։

Ֆէնէլա վերյիշեց այս փոքր դէպքը հաճոյքով, թէպէտ և դա բնաւ զարմանալի թուած չէր իրեն այն պահուն։ Հանդիպած էր էն շատ մը արտակարգ մարդոց, բայց տեսած չէր երբէք մէկը որ՝ առաջին կարգի տոմսակ մը ձեռքը՝ նախընտ-

րէր երրորդով ճամբորդել։ Ան յաճախ պատահած էր մարդոց՝ որ երրորդ կարգի տոմսակ առնելով՝ առաջին կարգով կը ճամբորդէին, առանց այդ բանը տոմսահաւաքին յիշելու ձանձրոյթը յանձն առնելու։

Երբ Ֆէնէլա կրկին նայեցաւ մարդուն, անոր աչքերուն արտայայտութիւնը զարմանք պատճառեց իրեն։ Կարծես բան մը չէին նշմարեր։

—Այո, կոյր եմ,—ըսաւ ան, իբր թէ էնոր խորհուրդները կարդալով։—Երբ վարժուիս՝ ոչինչ է։

Ձայնը խիստ քաղցր ու հաճոյալի էր։

—Իրողութիւնը կը յայտնեմ լոկ,—վրայ բերաւ,—վասն զի մարդիկ անհանգիստ կզգան երբ չըսեմ։ Ես բնազդով կը հասկնամ որ գտնելու վրայ են, ուստի և իրենց գիւտը կականկալեմ։ Կը յուսամ չը խրտչեցուցի ձեզ։

—Երբէք։ Կը... կը ցաւիմ։

—Միշտ լաւ է բացատրել խնդիրը՝ երբ մէկ ժամուայ ճանապարհ կայ առջիդ։ Աս նոյնպէս լռութիւնն ալ կը խզէ։ Ելեքտրական լոյս չէ՞ դա։

—Այո,—ըսաւ Ֆէնէլա։—Ի՞նչպէս կրնաք...

Ապա ընդհատեց։

—Բնազդ, թերևս։ Նիհար ցոլք մը կազդէ կոպերուս վրայ, սովորական կանթեղի ներգործումէն տարբեր։ Յիրաւի, աչքերը գրեթէ անէական են, երբ մարդ կը վարժուի առանց ատոնց։

—Սակայն վարժութիւնը ժամանակ չը՞ գրաւեր,—հարցուց Ֆէնէլա փոքր ինչ գթալիր շեշտով մը։ Ոչ և է նիւթ լաւագոյն էր՝ քան դաժան լռութեամբ նստիլն ու անձրևին դփառոցը լսելը՝ կառքի երթիքին վրայ։

Ժպտեցաւ ան

Ո՜չ, ո՛չ, շատ երկար չը՜ գրաւեր։ Հիմա, օրինակի համար, կրնամ նկարագրել ձեր տեսքը՝ լոկ ձեր ձայնին «շեշտագոյնէն»։

Պահ մը պնեց, ու այնպիսի վառ և ծայրայեղօրէն ճշգրիտ նկարագրութիւն մը ըրաւ Ֆէնէլայի, որ աղջիկը գրեթէ երկիւղ զգաց։ Արտառոց բան մը կար գործողութեան մէջ։

—Շատ դիւրին է,—ըսաւ, վստահեցնելով զէնի։—Մարդիկ կան որ դէմքերէն նկարագիր կարդալու և համանման բաներու վրայ կը խօսին։ Անոնք բոլորովին կը մոռնան որ վարժ ականջի մը՝ ձայնը դէմքէն աւելի կը պարզէ։ Վերջերս (ներեցէք կոյրի մը անխոհեմութիւնը) բաւական դժուարութիւններէ անցնիլ կը թուիք։ Այդ ձեր ձայնին անկիւններէն կը հասկցուի,—հոս ու հոն երբեմնակի բեկումներէն։

Ֆէնէլա, դուրսը տեղացող անձրեւը դիտելէ շատ աւելի նախընտրելի գտաւ սա՝ Անտարակոյս, զարհուրելի բան մըն էր կոյր օտարականի մը հետ խօսիլ, բայց Ֆէնէլա չէր կրնար զսպել ինքզինքը։ Ի՞նչ էր անի։ Արուեստագէ՞տ մը, բանաստեղծ մը։ «Շեշտագոյն» մի քիչ թեքնիքական կը հնչէր։ Իր բազմի ճանապարհը ամեն կարգի անյոյս ծառայողներով շրջապատուած կը թուէր։ Անձրեւ, հով, խաւար, ամէնն ալ իրար կը յաջորդէին ու քայլերը կը խանգարէին։ Միս Թրէսօք այս բոլոր պատարկու չարիքներէն առաւել վատթար չէր կրնար ըլլալ։ Այս կոյր անձը ամոքիչ պարագայ մըն էր կարծես, նախախնամութեան կողմէ ղրկուած՝ ճանապարհորդութեան ձանձրոյթը թեթեւցնելու։ Այսուհանդերձ, չկրցաւ մեղմ հառաչ մը զսպել, երբ արտակարգ ուժգին հով մը, զարնուելով պատուհանին, դղրդացուց զայն։ Անձրեւակաթիլները, նոյնպէս, նոր եղանակ մը սկսան «Շա՜տ ուշ է. շա՜տ ուշ է. շատ ո՜ւշ է»-ի։ Ոսէ նիւթ լռութենէն լաւագոյն էր։

—Շատ հաճելի օր մը չէ,— ըսաւ էնի։—Բաղդաւոր էք այսպիսի օրուան մը եղկելիութիւնը չտեսնելու. մարդուս մինչեւ ծուծը կը սողայ, եւ աշխարհը արցունքով կը լեցնէ։

—Ա՜հ, սակայն կզգամ թէ որքան ողբալի է ամեն ինչ,— առարկեց անի։—Ասանկ օր մը մէկուն համար ալ տարբերութիւն չկայ։ Համաձայնինք ուրեմն մեր թշուառութիւնը հաւասարապէս վայելել։ Ատի կօժանդակէ ժամանակը անցնելու։

—Տեղեկութիւն ունի՞ք Սդօքբօրդի վրայ,— պահ մը յետոյ հարց դրաւ անի։—Կառք փոխելու եմ հոն, եւ մեծ անտեղութիւն մըն է այդ այսպիսի եղանակի մը։ Նոյն իր բնակիչները կըսեն թէ Սդօքբօրդի շինումը սկսաւ ու վերջացաւ շաբաթ գիշեր մը, աշխարհաշինութեան այն աւելցուքներէն՝ որոնք այլ եւ ուրիշ բանի չէին կրնար գործածուիլ։ Այստեղի համար ալ յարմարութիւն չունէին, բայց գործծեր են։

Ֆէնէլա գաղափար չունէր Սդօքբօրդի վրայ, թէպէտեւ ինք եւ հոն պիտի կառք փոխէր։

—Գիտէ՞ք Պինկըլդընը,—հարցուց աղջիկը կոյրին, խորհելով որ մի քանի տեղեկութիւններ կրնար առնալ անկէ տեղի մասին։—Սդօքբօրդէ շատ հեռու չէ. կարծեմ։

—Պինկըլդը՞ն։ Օ՜, այո։ Ես հոն կը բնակիմ,—այսինքն, հոն կը բունիմ ու երբեմն Լօնդօն կերթամ՝ վրայէս ժանգը մաքրելու համար։

Ֆէնէլայի սիրտը թրթռում մը ունեցաւ։ – «Ի՛նչ որ ամենադէշն է՝ կուզեմ անմիջապէս իմանալ»։

—Ո՛հ, այնքան ալ գէշ տեղ մը չէ։ Ճիշդ՝ զիս ու Թշնամիս բովանդակելու չափ տարածութիւնով մը։

Յայտնեց սա այնպիսի եղանակով մը՝ որ տեղը կարծես բացառապէս այդ նպատակին համար էր շինուած։

—Ուրեմն շատ փոքր ըլլալու է,—վրայ բերաւ Ֆէնէլա։

—Ատի անդրադարձում մըն է հասակիս վրայ։ Մենք այդպէս չենք գտներ բնաւ։ Չէք կարծեր թէ լաւ է թշնամիներ ունենալ՝ որպէս զի ջանաս անոնք ալ քեզի նմանեցնել։ Անոնք խորապէս կատեն քեզ։ Աւելի կը նախընտրեն հարուած մը ստանալ՝ քան թէ համբոյր մը։ Երբ համբուրես զիրենք՝ պարտաւորուած են ներում խնդրել, և ներում խնդրելն ալ սիրելի չէ իրենց։

Ֆէնէլա մտածեց իր մասնաւոր Թշնամի՝ Կարա-Օղլուին վրայ և թէ՝ որքան անհաճոյ դրուագ մը կրնար ըլլալ սա իր պարագային։ Ինք, գոնէ, չէր կարող երևակայել ինքզինքը՝ զայն համբուրելու։

—Չեմ ուզեր որ զիս եսասէր մը նկատէք,—բացատրեց կոյրը,—սակայն բաղդը ազնիւ գտնուեցաւ ինծի՝ ձեզ հետ խօսակցելու այս առաջին առիթը ներկայացնելով։ Անգամ մը Անգլիոյ ամէնէ տգեղ անձը ըսած էր թէ՝ ամենէ գեղեցիկէն հինգ բոպէ միայն ետ էր մնացած։ Ամէնէ կոյր անձը Անգլիոյ—ես,—ճշմարտապէս կը հաւատամ, թէ հինգ բոպէ միայն ետ մնացած եմ Անգլիոյ ամենէ սրատես կնոջմէն—Թշնամիէս։ Արդ, Թշնամիս վաղը անտարակուսաբար պիտի ձեզ յայտնէ թէ՝ ինչպիսի նկարագրէ զուրկ մէկն եմ, և դուք պիտի վարանիք հաւատալ։ Այդ է մեծագոյն առաւելութիւնը՝ ձեզ հետ առաջին լուսաբանում մը ունենալուս։

—Կռիւը ինչի՞ մասին էր,—հարցուց Ֆէնէլա։

—Ի՞նչը ինչ էր,—կրկնեց ան փոքր ինչ տնվայելօրէն։—Կռիւը։ «Ո՛հ, չեմ գիտեր, ըսաւ ան, բայց նշանաւոր յաղթանակ մ'էր դա»։ Կարծեմ պարտէզիս մասին էր։ Միս Թրէսօքի խոզերը մուտք էին գործած հոն, և ես առարկեցի՝ որ խոզերը ծնեբեկներուս մէջ դեգերին. ծնեբեկը կարծես ինքզինքը լաւագոյն բաղդի մը արժանաւոր կը համարէր։ Ահա բոլորը։

—Միս Թրէսօք։—Ֆէնէլա «ոսկորներուն մէջ զգաց այդ», ինչպէս Յոյները կըսեն։—Բայց ես միս Թրէսօքին կերթամ կոր։

—Ճիշդ ինչպէս որ կռահեցի՝ երբ Պինկըլդընի մասին հարցուցիք։ Ուրիշին չէիք կրնար երթալ՝ որովհետև երթալիք ուրիշ մէկը չկայ։ Տեղական երկու համբաւաւոր անձեր կան Պինկըլդըն, և ատոնք են…

—Միս Թրէսօք և…

—Ես—Գոլտըն Քին։

Գոլտըն Քի՛ն… Անունը ծանօթ էր Ֆէնէլայի։ Հօրը անոր յիշատակումը լսած էր։

—Բան մը… բան մը ըրած չէ՞ք դուք,—հարցուց։

Կոյրը խնդաց։—«Ոճրագործակա՛ն բան մը ըսել կուզէք։ Պէտք չէ այդպէս խորհիք։ Ես—մի՛ վախնաք—աննշան բանաստեղծ մըն եմ—մէկը որ sonnet-ներ ու համանման բաներ կը գրէ—Թէնիսըն և Ջուր, նուաստ քերթողի մը խառնուրդով։ Ատկէ աւելի գէշ բան մը չունիմ։ Ատոնք… ատոնք ալ վայրագ բաներ չեն, այլ բոլորովին պարկեշտ, գրեթէ Ուըրտսվըրթեան՝ իրենց պարզութեամբ, բայց ոչ տարբեր տեսակէտով, կը ցաւիմ ըսել։

—Ուղիղ չէ,—ըսաւ Ֆէնէլա խանդավառօրէն։—Հոյակապ սօնէթներ էք գրած դուք։ Կը յիշեմ որ մէկը կսկսի.—«կանգնած հոգւոյս աւերակաց մէջ»։

—Ծիշդ իմ սէգ անամօթութիւնս՝ երևակայելով թէ իմ հոգւոյս նման անպիտան բան մը կրնար ոևէ մէկը շահագրգռել։ Աւերակներուն մէջ ուրիշներուն համար կանգնելու տեղ չկայ։ Արժանի եմ, սակայն։ Վարձքս գտած եմ։

—Ի՞նչպէս։

—Ես կը ճանչցուիմ իբրև՝ «Պինկըլդըն»ի Կոյր Բանաստեղծ»։ Պարզը մէկ և գունաւորը երկու պէնի տեսակի տխուրս մը, այնպէս չէ՞։ Աղջկան մէկը անգամ մը ձեռագիրս խնդրած էր՝ որովհետև լսեր էր թէ՝ կոյր ըլլալով՝ գրիչը ոտնամատներուս մէջ կը բռնեմ։

—Ու դուք շնորհեցի՞ք իրեն։

—Օ՛, այո։ Գրեցի—«Հարկը կը պարտաւորեցնէ։ Սովամահ որբ մըն եմ։ պէնի մը ձգեցէք գանձանակը»։ Ատի տետրակին մէջ է փակցուած և հպարտութեամբ ուրիշներուն կը ցուցնէ, բայց դեռ պէնին չէ ուղարկած։

Կարծես զարմանալիօրէն շատ կարճ ժամանակի մէջ հասան Ստօքբօրդ։ Գոլտըն Քին կուրութեան դատապարտուելէ առաջ ամէն ինչ ըրած ըլլալ կը թուէր։

—Չը կարծէք թէ անծանօթներու առջև կայլայլիմ, միս Ֆրօմա,—ըսաւ ան։—Առհասարակ՝ ո՛չ։ Անձնապաշտպանութիւն էր դա ուրիշ ոչի՛նչ։ Եթէ թողնէի որ թշնամին կողմը անցնէիք առանց բացատրական բառի մը ինձմէ՝ կորսուած մէկն էի ես։ Այժմ որ իմ պատմութիւնս ևս լսեցիք խօզերուն և ծնեբեկի մասին, կրնաք մի քիչ ներողամիտ գտնուիլ կանացի… կա-

նացի... ո՜հ, լաւ... կանացի երևակայութեան հանդէպ։ Ուրախ եմ՝ խորհելով որ իմ տեսակէտս ալ իմացաք։ «Եռապատիկ օրհնեալ է ան որուն կռիւը արդարացի է»։ Գիտէք ասոր Ամերիկեան շարունակութիւնը։ «Սակայն քառապատիկ օրհնեալ է ան որ իր հարուածը նիքով կատանայ»։ Արդ, ես իմ հարուածս նիքով ստացայ և վստահօրէն ձեր արդարասիրութեան զգացումին դիմում կընեմ։

—Բայց ես միայն ձեզ լսեցի։

—Կապահովեմ ձեզ, խոզերը տակաւին միս Թրէսօքի մօտ են. ատոնք կրնան ներկայացուիլ իբրև վկայութիւն։ Եւ պէտք է ծներեկի ածուներուս քարուքանդումը տեսնէք։ Հոգւոյս աւերակները ոչինչ են ատոնց մօտ։ Այդ ածուները յարմար տեղ չեն խոզերուն, թէպէտև իրենք հանգիստ զգան հոն։ Միս Թրէսօք այդ ապացոյցէն չկրնար խոյս տալ։—Բայց ահա հասանք Պինկըլդըն։ Մէկը ունի՞ք ձեզ սպասող։

—Ո՛չ, ըսաւ Ֆէնէլա, իրականութեան գալով։ Ունկնդրելով Գոլըն Քինի թեթևասիրտ ունայնախօսութեանց, որոնցմով իր թախիծը վանել կերևակայէր, մոռցած էր բոլորովին իր յուսահատ կացութիւնը։ Այժմ, ասոր մղձաւանջը անգամ մը ևս վերադարձաւ։ Իր արցունքները խեղդեց ձայնին մէջ՝ երբ Գոլըն Քինի ծառան կառքի դրան մօտեցաւ։

—Չհեռագրեցի՞ք արդեօք,—հարցուց կոյրը։—Կանայք շատ քիչ կը մտածեն այսպիսի բաներու վրայ։

—Ո՛չ,—պատասխանեց Ֆէնէլա, ընկճուածօրէն.—չհեռագրեցի։ Պատ...ճառներ ունէի չհեռագրելու։

—Շա՜տ լաւ. շա՜տ լաւ։ Անշուշտ այսպիսի եղանակի մը չես կրնար հոս ու հոն վազվռտել՝ կառք մը գտնելու համար։ Թոյլ տուէք ինձ միս Թրէսօքին առաջնորդել ձեզ։ Թոմբսըն, ըսէ կայարանապետին այս տիկնոջ իրեղէնները հնար եղածին չափ շուտով, միս Թրէսօքի տունը ուղարկել։

—Այո, տէր իմ,—ու Թոմբսըն հապճեպով հեռացաւ՝ կայարանապետը գտնելու։

Ֆէնէլա խիստ համեստ էր։ Պարտաւորուած զգաց բացատրել պր. Քինի թէ՝ իրեն շնորհուած ոևէ ազնուութիւն, կրնար, խիստ հաւանականօրէն, միս Թրէսօքի վայրոյթը բազմապատկել ծներեկի ածուներու մասին։

—Հոգս չէ այդ մասին,—ըսաւ կոյրը սրտմտած։—Թոյլ չը պիտի տայի որ այս անձրևին ոտքով երթայիք։ Ջրաթաթախ կըլլաք։

—Սակայն միս Թրէսօք չը սիրեր այդ,—բողոքեց Ֆէնէլա։

—Ուրեմն պէտք է չխրել։ Ես ալ իւր խոզերը չեմ սիրեր, սակայն ելք չկայ։ Արդ, Թոմբսըն, առաջնորդէ օրիորդը կառքը—հովանոցը լաւ բռնէ վրան—և ապա եկուր ու գիս տար։

Գրեթէ արցունք եկաւ Ֆէնէլայի աչաց։

—Զիս ապերախտ մի կարծէք՝ որովհետև շնորհակալութիւն չյայտնեցի,—ըսաւ մեղմ ձայնով մը, մինչ դէպի Պինկլըդըն տանող բլուրէն վեր կը բարձրանային։

—Անհոգ եղէք այդ մասին,—պատասխանեց ան զուարթօրէն։—Ես պէտք է որ շնորհակալ ըլլամ ձեզ՝ իմ մենութեանս վրայ գթալնուդ համար։ Կատարեալ հրճուանք մը եղաւ իսկ ճանապարհորդութիւնը։ Արդ, զիս պիտի կարծէ՞ք չափազանց անխոհեմ մէկը՝ երբ խօսք մը ընեմ ձեզ։

—Երբէք։

—Անշուշտ օտարականներ ենք մենք և ես իրաւունք չունիմ ձեր վստահութիւնը բռնաբարելու։ Պատմութիւն մը կապուած է ձեր կեանքին—ձայներնիդ կը մատնէ այդ—ու ապերջանիկ էք դուք։ Մօտիկ դրացիներ ենք։ Իմ տունս բլուրէն երկու հարիւր կանգունի չափ վերն է—մոխրագոյն քարէ շէնքը։ Կուզէի խրատ մը տալ ձեզ։ Միս Թրէսօք փոքր ինչ անհամբոյր մէկն է։ Զինքը բնորոշող ուրիշ անուն չկայ։ Կծու կին մըն է, և միւս բոլոր կծու կանանց նման, առհասարակ կը սիրէ այլոց վրայ՝ որ կծու չեն, քացախ ու ժուռ սրսկել։ Պէտք չէ յուսահատիս՝ երբ իրերը ակնկալածէդ տարբեր երևան գան։ Այդ է բոլորը։

Ու կառքը հեռացաւ մթութեան մէջ, նախ քան Ֆէնէլայի շնորհակալութեան խօսք մը յայտնել կարողանալը։

Գրեթէ հինգ վայրկեան վարանոտ մնաց՝ տունը փողոցէն բաժանող դրան առաջ։ Անձրևը ուժեղ կաթիլներով կը հոսէր մուտքի հսկայ շագանակենիի մը մէջէն։ Բարձրացուց հովանոցը, բացաւ դուռը և ուղղուեցաւ դէմի մթին, չափաւոր մեծութեամբ քարէ շէնքը։ Գաւիթը կախուած կանթեղին թեւահար լոյսով կրնար նշմարել որ տունը քարաշէն էր։ Հովն ու անձրևը հինցած պատերը կը ծեծէին տեսակ մը անազնիւ սրտնեղութեամբ, և տեղին երևոյթը մարդուս հոգին կը սառեցնէր։

Ֆէնէլա բաղխեց, սակայն մէկը չեկաւ։ Նորէն բաղխեց, մինչ ներսի կանթեղը իր երերուն լոյսը առատօրէն շուրջը կը սփռէր՝ որպէս թէ ծովուն վրայ։ «Կարծեմ դժբաղդութիւնս կսկսի, խորհեցաւ օրիորդը։ Արդէն արցունքով ջրաթաթախ եղայ տուն մտնելէս առաջ։ Ամբողջ գիշերը հոս մնալ անկարելի է»։

Տանը ետեւի կողմը գնաց, լոկ խաւարային լռութեան մը հանդիպելու։ Մինչ կը պատրաստուէր Պինկլտընի գիւղը վերադառնալ գիշերը անցնելու, պատուհաններէն մէկէն լոյս մը երեւցաւ և առաջնորդեց զինքը կողմնակի դրան մը՝ որ խոշոր խոհանոցի մը վրայ կը բացուէր։ Զուարթ կրակ մը կը բոցավառէր հնաձեւիկ կրակարանին մէջ և շէկ լոյս մը կը սփռէր սեղանին մօտ դէմ առ դէմ նստող երկու հոգիի դէմքերուն վրայ։ Մէկը քառասունի մօտ խաթունիկ մըն էր, վայելուչ աչքերով, բայց և այնպէս գէր ու ծաղկատի. միւսը, մարդ մը՝ որուն տարիքը կրնար ոևէ աստիճան ըլլալ։ Իր դիմագծերը ծայրահեղ բթամտութեան մը երևոյթը կը կրէին ու խօսակցութիւնը զուրկ էր առոգանութենէ։ Պարտիզպանի զգեստներ էր հագած և տարակոյս չկար որ հողի զաւակ մըն էր, որմէ մեծ քանակութեամբ կը կրէր հանդերձներուն վրայ։

Մինչ դրան առաջ վարանոտ կսպասէր, Ցէնէլա հասկըցաւ որ խիստ քրիթիքական ու սիրավառ րոպէի մըն էր հասած հանդիսավայրը։

—Խոստացի՛ր. տիկին Պրէտըլ, խոստացի՛ր,—կը պաղատէր մարդը, աթոռը սեղանին միւս կողմը հրելով մտածկոտօրէն։ Խոստացի՛ր, տիկին Պրէտըլ, սիրելի աղաւնիս։ Չորս խոզ և կով մը, և խրճիթ մը, և... և կարասիք, սիրելի աղաւնիս։ Կարասիք,—կրկնեց շեշտով մը։ Կարասիք. և հետը ժրաջան մարդ մը։ Այն քու թեթեւսոլիկ երիտասարդներէդ չէ՛, որոնք կամ գինետունը և կամ ոստիկանատունն են միշտ։ Պատասխանատու մարդ մը, տիկ. Պրէտըլ, չորս խոզով և կովով մը, սիրելի աղաւնիս, և խրճիթ մը ու կարասիք։

Մատները չորս անգամ ուժգնօրէն սեղանին զարկաւ, կարծես իր խոզերուն թիւը շեշտելու համար։

—Գրողը տանի մարդը և իր խոզերը, և իր հեթանոս սիրուն աղաւնիները,—ըսաւ տիկ. Պրէտըլ։ Իր խօսուածքն ալ նոյնքան զանգաղ էր, որովհետև թէ Ճէքսըն և թէ ինքը միս Թրէսօքի գաւառէն էին։—Գրողը տանի մարդն ու իր խոզերը։ Խոզերը խիստ անպիտան արարածներ են, Ճէքսըն, ինչպէս նաև մարդիկը։ Երկուքն ալ միշտ կաւըրշտկեն։ Կաւըրշտկեն, կաւըրշտկեն ու կաւըրշտկեն, գիշեր ու ցորեկ։ Կուզեմ քիչ մը ևս Մարթա Պրէտըլ մնալ, Ճէքսըն։

—Պլէտընի ճամբուն վրայ երիտասարդ կին մը կայ,—սկսաւ Ճէքսըն, ակներևօրէն այս անպատուիչ խօսքերէն զգացուած։—Գեղանի երիտասարդ կին մը, որ...

—Ա՜հ, կորսուէ։ Կը ճանչնամ զինքը, Ճէքսըն,—պատաս-

խանեց անողոք տիկ. Պրէտըլը,—ու ան քեզ հետ գործ չկրնար ունենալ, որովհետև Աստուած իրեն բաւական խելք է տուած՝ քու անմատչելիութիւնդ հասկնալու կնոջ վերաբերմամբ։ Ոչ թէ որովհետև վայելուչ մէկը չես՝ երբ կիրակի օրը լուացուիս, բայց որ շատ նուիրուած ես խոզերուն։ Շատ նուիրուած։ Գնա այդ դեռատի կնոջմէն խնդրէ քեզ ու խոզերուդ հոգ տանել և մի գար ու նեղեր զիս։

Ճէքսըն դանդաղօրէն ոտքի ելաւ, սակայն այդ հանգիստ սենեակը թողնելու փութկոտութիւն չէր ցուցներ։

—Խոզը՝ խոզ է, և սիրաբանութիւնը՝ սիրաբանութիւն, ու ատոնք պէտք չէ որ միախառնուին։ Շաբաթ գիշեր նորէն կուգամ սիրաբանելու,—ըսաւ ծանր արտայայտութիւնով մը, որպէս թէ դարեր ունէր առջին այսպիսի սիրուն ամրոցի մը պաշարման համար ու զայն յանձնելու անճարութեան չունէր։ Որ ոևէ խելահաս կին ընդունակ էր մերժել զինքն ու իր խոզերը, բարոյական անկարելիութիւն կը նկատէր.

—Կրնաս ամիս մը ևս չգալ։ Մարդիկ չափազանց ձանձրոյթ պատճառող արարածներ են,—ըսաւ տիկին Պրէտըլ։—Թերևս խոզերուն չափ ալ։ Խոզերը չես կրնար յղկել. չես կըրնար նոյնպէս յղկել մարդիկը։ Այրի կին մը՝ որ անցած է ամուսնութեան բոցավառ հնոցէն, անգամ մը ևս խանձուիլ չուզեր

—Եւ չորս խոզեր՝ որ մինչև Պըրքշիրէն հոս են եկած,—ըսաւ Ճէքսըն, պատրաստուելով հեռանալ։—Բացի վայելուչ անձ մը ըլլալէ, տիկ. Պրէտըլ, պանքան դրամով և լաւ...

—Կորսուէ,—ըսաւ տիկ. Պրէտըլ, խոշոր հիւսելու ասեղը թելադրիչ շեշտով մը ձեռք առնելով։

Ֆէնէլա, յուզումով ու յոգնութիւնով ընկճուած, հազիւ թէ ոյժ ունէր դուռը հրելու։ Ներս տատանեցաւ գունատ դէմքով և վառվռուն աչքերով, ինկաւ տիկ. Պրէտըլի մայրական գիրկը ու նուաղեցաւ։

Թարգմ. անգլ. Մինաս Ցօլակ

Ջ. Բ. ԲԸՐՋԻՆ

(Կը շարունակուի)

# ԵՐԿՈՒ ԹՌՉՈՒՆ

(Պատկեր Շամախու կեանքից)

Հազար ութհարիւր եօթանասուն երեք թուի ամրան վերջերին մի անսովոր շարժումն էր սկսվել կիսաւեր Շամախի քաղաքում,—իսկ կիսաւեր չէր լինի նա, եթէ հոգատար մայր բնութիւնը մի փոքր անզգոյշ չվարվէր նրա հետ, երբ՝ չգիտես օրօրել էր կամենում իր զաւակին որ նա իրա նահապետական անոյշը քունը շարունակի, թէ բօթել՝ որ քնից արթնանայ։

Մի գեղեցիկ երեկոյ երբ մարդիկ ցերեկվայ տաքից և աշխատանքից յոգնած դուրս էին եկել Կարմիր-փողոցում զբօսնելու և մի փոքր մաքուր փոշի ծծելու, նկատեցին, որ ռուսաց եկեղեցիի գմբէթի վրայ թռած եկան և թառ եղան երկու անյայտ մուգ-դեղնագոյն թռչուններ։

Առաջին օրը նրանք մի առանձին հետաքրքրութիւն չշարժեցին և եթէ նոյն օրն և եթ թռչէին ու գնային իրանց գործի ետևից, ոչ մի խօսակցութիւն էլ տեղի չէր ունենալ։ Եւ ինչ երկար ու բարակ խօսակցութիւն պէտք է լինէր. թռչուններ էին, եկան, նստեցին յոգնածութիւնները առին և կրկին թռան ու գնացին իրանց երկար ճանապարհը շարունակելու։

Սակայն ամբոխի զարմանքը մեծ եղաւ, երբ միւս օրի երեկոյեան անծանօթ հիւրերը նորէն յայտնվեցին և նստեցին նոյն տեղում։ Ահա այստեղից էլ սկսվեց շարժումը։ Կարծեմ տեղն էր, որ մարդիկ զանազան գուշակութիւններ և ենթադրութիւններ անէին, ինչո՞ւ առիթը ձեռքից բաց թողնել. չէ՞ որ ամեն մէկի քաղաքացիական և հասարակական պարտաւորութիւնն էր շտապելու և իրա կարծիքը յայտնելու. սրա համար էլ նրանք քաղաքացի էին, որ շրջան կազմէին և տեսնէին, որ եթէ քաղաքին մի որ և է վտանգ է սպառնում, ապա միացեալ ոյժերով միջոցների դիմէին և օր առաջ գալոց վտանգի առաջն առնէին։

Իսկ վտանգ կար։

—Սա անպատճառ մի սիրահարված զոյգ է, որ իմանալով է երամից յետ մնացել. սրանք շատ խորամանկ են լինում, ես ճանաչում եմ սրանք ինչ թռչուններ են, յայտնեց իր կարծիքը հարուստ երիտասարդ Լևոնը։

—Իսկ ես կարծում եմ անփորձութեան շնորհիւ են ընկել այստեղ, համարձակվեց նկատել նրան քարտաշ Պետրոսը, որովհետև ինչպէս էլ որ հրամմանից յայտնի է, տեղափոխվող թռչունների Հիւսիսից Հարաւ թռչելու ժամանակը դեռ չի եկել։

Ոմանց կարծիքով նրանք ջայլամներ էին, մի քանիսի համար արագիլներ, ոմանց համար կռունկ, և որովհետև հասարակ թռչունների անուն տուող չկար, ուստի մէկն էլ համեստաբար յայտնեց, որ նրանք կարապներ պէտք է լինեն։ Նրա հետ ոչ ոք չհամաձայնվեց, որովհետև յայտնի է որ կարապը շատ մեծ թռչուն է։

Այն ժամանակ մէջտեղ մտաւ երկարահասակ Սէրոբ վարժապետը, որ մինչ այժմ մեծ քիթը ձեռքերի արանքը առած ծիծաղում էր նրանց վրայ և ուսերը շարժելով հեգնական տոնով ասաց.

—Ես էլ կարծում եմ, որ սրանք աշխարհի ամենամեծ թռչուններից են, այսինքն Ստրաուս, որ Սախարայի անապատներում երևելի թռչում են և հայերեն կոչվում են աղջիկ փախցնող։

Այդ ակնյայտնի ծաղրը և բոլոր վերև խօսածները ամբոխին դիւր չեկան, ուստի երբ հերթը եկաւ Մաղաքին, որին ծնոտի ծռութեան պատճառով կոչում էին Ոսկէծնոտ, ասաց.

—Բանը նա չի թէ ինչ թռչուններ են, այլ այն՝ թէ եթէ այստեղ մի խորհուրդ չկայ, ինչու՞ են նրանք եկել թառ եղել եկեղեցիի գմբէթի խաչի վրայ և այն էլ նրա ձախ կողմում։ Ահա ինչի մասին պէտք է մտածել։

Ցոյց տալու համար, որ Ոսկէծնոտի արտայայտած մտքի նրբութիւնը շատ լաւ է ըմբռնել, մէջտեղ մտաւ և մի աչքը ճպելու նման անելով խորհրդաւոր եղանակով ասաց մուղդուսի Անդոնը։

—Դեռ հարց է սրանք թռչուննե՞ր են արդեօք։

Այստեղից սկսած խօսակցութիւնը ընդունեց ուրիշ ուղղութիւն, որին և անձկանօք սպասում էր ամբոխը։

Աւելի խոր դիտողները նկատել էին, որ առաւօտվայ երրորդութեան զանգերի ժամանակ նրանք թռչում են դէպ Արևելք, իսկ երեկոյի ժամաժամքին վերադառնում արևմուտքից։

«Արևելք 'են գնում և Արևմուտքից յետ գալիս», այդ բա-

նը հաւատացեալներին բոլորովին դիւր չեկաւ, վասն զի Քրիստոսի երկրորդ գալստեան նրանք սպասում են Արևելքից և ոչ Արևմուտքից, որ Թուրքերի աղօթարանն է։

Լուսաւորչական հայերի համար մեծ կոտրութիւն էր այն հանգամանքը, որ Թռչունները գոնէ մի անգամ նրանց ժամի վրայ չէին նստում, այդ մասին նրանք տրտունջ էին յայտնում ի հարկէ իրանց մէջ այնպէս, որ ուրիշ դաւանութեան մարդիկ ոչինչ չլսեն։ Նրանց մխիթարելու համար մէկը մէջտեղ մտաւ և սուտ ղօրթ Աստուած գիտէ յայտնեց, որ—տեսնողներ են եղել, որ մի գիշեր էլ հայոց եկեղեցիի գմբէթի վրայ են եղել Թառ եղած և որ մինչև անգամ այնտեղ նրանց վրայ լոյս է եկել։

Այդ մասին ի հարկէ լսողները արտաքուստ ոչ մի կասկածի նշոյլ չարտայայտեցին, թէ ինչու, յոյս ունիմ պարկեշտ ընթերցողը ինձնից անհամեստ բացատրութիւն չպահանջի։

—Տեսնես ի՞նչ միտք ունի, որ նրանք խաչի ձախ կողմումն են Թառ լինում և ոչ աջ։

—Իհարկէ սա, պէտք է ասել, պակաս կոտրեցուցիչ հանգամանք չէ։

—Արդեօք էլի երկրաշարժ չլինի և մեր գլխին մի նոր դժբախտութիւն բերի, հարց տուեց մուղդուսի Անտոնը, որ մի առանձին յոռետեսութեան ախտով էր բռնված։

—Աւելի լաւ է կրակ տալ և տեղնուտեղը սպանել այդ չարագուշակ փետրաւորներին։ Ես կը հաստատեմ, որ սրանք անսուրբ Թռչուններ են։

—Ինչով կը հաստատես։

—Նրանով, որ սուրբ Թռչունը իրա տակը չի սպիտակացնիլ այնպէս, ինչպէս որ սրանք։

Ամէնքը նորից վերև նայեցին. արդարև այդ ասողը իրաւունք ունէր, Թռչունները այդ կողմից իրանց պահել էին շատ անկօրրեկտ։

— Որտե՞ղ ես որսորդ Մարտին, որ մէկ կրակ տալում երկուսի էլ փետուրները ցրիւ տայիր, ասաց նոյն պարոնը։

—Այ մարդ գլխիդ ձի՞ է քացի տուել, թէ՞ գժվել ես։

—Ո՞վ կը համարձակվի եկեղեցիի օծեալ խաչի վրայ գընդակ արձակել։

—Ո՞վ կը համարձակվի սուրբ տեղում անմեղ արիւն Թափել։

— Թէ՞ կամենում էք առանց այն էլ խեղճ ու կրակ քաղաքի գլխին էլի մին երկրաշարժ բերէք։ Իսկ եթէ մէջտեղ Տէրը հրամանը լինի։

Վիճաբանութիւնը ստանում էր սուր կերպարանք և շըրջանը գնալով մեծանում էր։ Իսկ Թռչունները լուռ էին, մունջ. ոչ մի ձայն չէին հանում. և, երևում էր, եկած-չեկած քուն էին մտնում, քանզի բնաւ չէին շարժվում։ Քանի մթնանում էր, ամբոխի յոռետեսութիւնը աւելի էր սաստկանում. ոչ ոք լաւ բան չէր նախագուշակում։ Միայն Սերոբ վարժապետն էր, որ ոչ ոքի հետ չէր համաձայնում։ Լսում էր նա այդ բոլոր խօսակցութիւնը և լռում էր։ Նա չէր սիրում խօսել մի նիւթի մասին, որ իրան չէր հետաքրքրում և որին ինքը ծանօթ չէր. բայց եթէ պատահում էր ընդհակառակը, նա խօսում էր այնքան, մինչև որ բերանը փրփրում էր։ Սրա համար էլ,—որ նա տաքացած էր խօսում,—յիմարները նրան խենթի տեղ էին դնում, մոռանալով որ իմաստունը նրանով է իմաստուն, որ գիտցած բանի մասին է խօսում։ Երկու Թռչունների յայտնվելը նրա համար մի թէև անսովոր, բայց յամենայն դէպս ոչ մի նշանակութիւն չունեցող բան էր։ Նոյնը կամենալով հասկացնել և ամբոխին, դարձաւ և խաղաղ կերպով սկսեց այսպէս.

—Եղբայրներ, ես զարմանում եմ ձեզ վրայ. երկու անմեղ Թռչուններ են, պատահաբար եկել են այստեղ, կրկին կանցնեն կը գնան իրանց գործին։ Նրանք կարող էին նստել և մի ծառի վրայ, կարող էին իսկի չնստել էլ։ Նրանք շատ բան կարող էին անել, բայց այստեղ ի՞նչ գուշակութիւնների, ի՞նչ Աստուծոյ մատի, ի՞նչ պատմութիւնների տեղ է։ Շամախի քաղաքը ի՞նչ կապ կարող է ունենալ այդ անմեղ Թռչունների հետ, որ նրանց պատճառով երկրաշարժ լինի։ Երկրաշարժը, եղբայր, լինում է գլխաւորապէս երեք հանգամանքից. կամ երկրի տակի վուլկանական շարժումներից, կամ այնտեղ կրակներից առաջացող շոգիների և գազերի լայնանալուց, կամ վերջապէս երկնային մարմինների ազդեցութիւններից։ Այդպէս են մեզ ապացուցանում գիտնականները։

—Բայց քո էդ գիտնականները որտեղի՞ց գիտեն թէ գետնի տակին ինչե՞ր կան,—բերանը մի կողմ ծռելով և ամբոխի ծաղրը գրգռող եղանակով նկատեց մէկը։

Այդ կատաղեցրեց Սերոբին, և նա սկսեց տաքանալ, բերանը փրփրացնել.

—Այդ գիտնականները, որ չափել են և գիտեն արևի մեծութիւնը, նրա ջերմութեան աստիճանը, նրա կշռի չափը... գէօլօգների համար պարզ է ամեն բան, որովհետև նրանք ուսումնասիրել են երկրագնդի մակերևոյթը, նրա ներսը, ատմօսֆերան, անտիկլինալը, սանկլինալը...։

Նա երկար շարունակեց, բայց ամբոխը նրա ասածներից ոչինչ չհասկացաւ, որովհետև նա սկսեց գործածել անհասկանալի բառեր, որոնց իմաստը նա միայն ինքն էր հասկանում։ Նա բռնեց գլուխը և լռեց։

Մինչ այդ մէջտեղ մտաւ շագանակաքիթ մրգավաճառ Իսմայիլը և յայտնեց հետևեալը.

—Հաւատացէք խօսքերիս, այլակրօն եղբայրներ, որ սրանք ջաբրայիլներ են, սրանց Ալլահն է ուղարկել. և եթէ սրանք նստէին մեր Ջումա-մէչիթի մինարէի վրայ, Ղուրանը վկայ, օրական հարիւր ոչխար մատաղ կը մորթէինք։

Ջերմեռանդ Թուրքի այդ խօսքերից կարծես զարթնելով քնից, ասաց Սերոբը հայերէն.

—Խեղճ ոչխարներ, ով Աստուծոյ հետ երկու կոպէկի հաշիւ ունի, ձեր անմեղ արիւնը պէտք է թափվի։

Հետևեալ օրը կրկին խռնված էր ամբոխը, որ սպասում էր Թռչունների գալուն. սակայն այդ օրը նրանք սովորականից ուշացան, ուստի ամէն ոք նայում էր երկնքի զանազան կողմերը և աշխատում, որ ամենից շուտ ինքը նկատի և ինքը այդ մասին յայտնի ժողովին։

—Ահա, ահա, արևելքի կողմը նայեցէք, այ հայեր,—ասաց մի ծերունի դերձակ, որը եթէ ոչ իրա քթից, բայց գոնէ ոտքի տակից այն կողմը շատ դժուարութիւնով էր տեսնում։—Հորէն, հորէն, գալիս են։

Ամբոխը նայեց այն կողմ և ոչինչ չնկատեց։ Ծերուկը զարմացած նրանց վրայ՝ ձայն էր տալիս։

Այ հայեր, մի՞թէ չէք տեսնում. մի լաւ նայեցէք է, հորէս՝ հէնց կարծես բոլորովին աչքիս առաջին լինեն. մինչև անգամ ես պարզ տեսնում եմ, որ մէկի պոչը շատ երկար է, միւսինը՝ կարճ...

Մի՞թէ չէք տեսնում. նրանք բոլորովին սև են... ահա, ահա։

Նա այնպիսի հաւատով էր ասում, որ մի քանիսը համաձայնվեցին նրա հետ և յայտնեցին, որ իրօք իրանք էլ նկատում են ինչ-որ երկու սև կէտեր։

Շուտով պարզվեց որ երկու սև կէտերը ոչ այլ ինչ էին, եթէ ոչ դերձակի գդակի տակից կախված թելի երկու ջչկռուկները, որոնց նրա վատ երևակայութիւնը Թռչունների տեղ էր ընդունել։

Ամբոխի մէջ բարձրացաւ ծիծաղ, որը խսկոյն փոխվեց ինչ-որ խուլ աղաղակի։ Արևմուտքի կողմից վիզները առաջ երկարացրած արագութեամբ սլանում էին երկու Թռչունները։ Ա-

*մենքը բռնելով շունչները սրտատրոփ սպասում էին, թէ նրանք որտեղ կը նստեն։ Ահա, նրանք բոլորովին մօտեցան և կարծես մտադրվեցին ընթացքները փոխել... Նրանք կամենում էին բռնել աջ կողմ ու դէպի հայոց եկեղեցին... Նրանք գտնվում էին երկու միմեանցից ոչ շատ հեռու գտնվող եկեղեցիների մէջտեղում. հայերի բաղձանքը չկատարվեց. Թռչունները նորից թեքվեցին ձախ և եկան նորից նստեցին իրանց առաջվայ տեղում,—ռուսաց եկեղեցու խաչի վրայ։*

*—Նկատեցէք, նկատեցէք,—ձայն տուաւ մէկը.—այս անգամ նրանք նստել են խաչի աջ կողմում։*

*Հազիւ այդ մասին սկսվել էին ինչ-որ դատողութիւններ և նորանոր ենթադրութիւններ, երբ թռչունները գլուխները մօտեցրին իրար, մի փոքրիկ խորհուրդ արին և ի մեծ զարմանս ամբոխի՝ նորից անցան խաչի ձախ կողմ։*

*—Հիմա ես բոլորը հասկացայ,—ասաց գերեզմանափոր Օհանը և արագութեամբ քայլերը ուղղեց դէպի տուն։*

*Կատակ էր այդ թէ ուրիշ բան, նա ոչ մի բացատրութիւն չտուաւ, միայն թէ այդ բանը խոր տպաւորութիւն թողեց ամբոխի վրայ, որը Օհանին համարում էր մի խելքը գլխին մարդ։*

*—Ասում են՝ արեն էլ մի թիզ ներքև է իջել,—մէջտեղ մտաւ և իր փոքրիկ թիզը ցոյց տուեց մի պատանի, որ մեծերի շարքը մտնելով բռնել էր իրան նրանցից ոչ պակաս։*

*—Սա ոչինչ. հինգ օր է Նունիկենց բակը գիշերով քար է ընկնում,—ասաց ժողովին մի սափրիչ։*

*—Ապա որ Բօզիանց Ավանէսի ձին հերու չէ մէկել տարի ընկոյզի մեծութեան արտասուք թափեց. սրան ի՞նչ կասէք,—հարցրեց Փոտիքենց Էրեմը։*

*Սրանց գերազանցեց ճուպպալաճճի Սաղաթէլը, որ յայտնեց հետևեալը.*

*—Երէկ գիշեր Կոճի-կամուրջի վրայով հրեղէն ձիու վրայ մի տկլոր կնիկարմատ մազերը քամուն տուած թռել է անց կացել։*

*—Ես կարծում եմ՝ այս անօրինակ երևոյթների պատճառը նա է, որ լուտերականութիւնը սկսել է տարածվել ոչ թէ միայն քաղաքի, այլ և գիւղերի մէջ։*

*—Եղբայր, լուտերականութիւնը հայերի մէջ է տարածվում, էլ այստեղ ի՞նչ մեղք ունեն ռուսը, մօլօկանը, թուրքը։ Եթէ լուտերականութեան համար երկրաշարժ լինէր, ամբողջ Գերմանիան պէտք է հիմնայատակ կործանվէր,—տաքացած նըկատեց Սերոբը։*

—Եւ յոյս Աստուած, որ կը կործանվի էլ,—նկատեց Նրան մեր Անտոնը, աւելցնելով.- սա էլ Նա չի, որ գնաց ֆրանգին յաղթեց։

Շուտով եկաւ Գիւրջեանի թաղի կողմերից բրուտ Խոսրովը և յայտնեց ժողովին, որ կուզ Մարկոսը երազ է տեսել, որ երազում մի ծերունի ասել է Նրան. «Յայտնիր Շամախի քաղաքի ժողովրդին, որ ինձ հարկաւոր է քառասունուչորս հատ մանուկ զոհեր»։

—Յիսուս Քրիստոս,—ձայն տուեց գիժ Նազանին և բարձրացրեց երկու ձեռքերը դէպի ռուսաց եկեղեցու գմբէթը։—Ձեր վզերին փաթաթվի Նազանին, ձեզի մատաղ լինի Նա, այ թըռչուններ, դուք այս կրակը, դուք այս անբախտութիւնը հեռացրէք մեր խեղճ քաղաքի գլխից։

Այդ ասելով Նա սկսեց անվերջ անծայր ծունր դնել։

Յանկարծ յետին շարքերում լսվեց մի ապտակի ձայն։ Ամենքը այն կողմը նայեցին և ի՞նչ տեսնեն։ Ոսկեծնոտ Մաղաքէլը ամբողջ հասակովը մէկ փռվել է գետնին և աչքերը երկնքի մի կէտին յառած մնացել է նուաղած։

Եթէ այդ սաստիկ ապտակը գոնէ խփուած լինէր Նրա ծուռ ծնոտի հակառակ կողմից, գուցէ և Նրա բերանը ուղղված, ուրեմն և կարելի էր խփողին ներել իր յանցանքը, բայց, տարաբախտաբար, անշնորհք խփողը այդ տարրական հաշիւը աչքի առաջ չէր ունեցել. ընդհակառակը Նա իր արածը մեծ բան կարծելով խրոխտում էր, գռգռում և ասում.

—Բոլոր անբախտութեան պատճառն այս անաստուածն է. երէկ գետնին պառկած տեղը—ճիշտ այսպէս, ինչպէս հիմա էք տեսնում - ծուլութիւն արաւ գլուխը մի կողմ ծռի, և թքեց ուղիղ երկնքի երեսին. էս խաչելութիւնը վկայ, եթէ ինձանում մեղք կայ, պատեցէք ինձի։

Սերոբը նորից կատաղեց։

—Առաջինը՝ այս խեղանդամին մի մատ երեխան էլ կը ծեծի, ուրեմն քո արածը մեծ բան չիմանաս. երկրորդ՝ եթէ երկնքի երեսին թքել է, դո՞ւ ով ես, որ երկնքի տեղ մէջտեղ ես մտել. երրորդ՝ եթէ Նա երէկ է թքել, թռչունները չորս օր է որ գալիս են. չորրորդ՝ հէնց ասենք թէ թքել է վերև, բայց ո՞րտեղ երկընքի երեսը և ո՞րտեղ Նրա թուքը. վերջապէս ի՞նչ է նշանակում երկինք, եթէ ոչ մի դատարկ տարածութիւն...

—Օհօ, դատարկ...։

Հէնց այդ մէկ բառը բաւական էր որ ամեն ինչ կատարեալ լինի։

—Բարեկամ, խնդրենք լեզուդ մի քիչ քեզ քաշես. ինչպէ՞ս թէ երկինքը դատարկ տարածութիւն է։ Եթէ նա դատարկ տարածութիւն է, ապա որտե՞ղ է կանգնած Ամենակարողի սուրբ գա՞հը։

—Ահա այդպէս արիք, որ հեռու Տընգրեկենց հաւը աքլորի նման կանչեց և 12 ծննդկան էլ զոհ գնաց է...

—Անունդ վարժապետ ես դրել, բայց գլխիդ մէջ մուկներ են վազ-վազ անում։

—Խնդրենք մի փոքր չափ ու սահման հասկանաս։ Դուք կարելի է էն Թռչուններին էլ չէք հաւատում, բայց ինքը Հոգին Սուրբ, ասված է, աղաւնակերպ իջաւ, երբ աշխարհիս Փրկիչը մկրտվում էր Հրէաստանի Յորդանան գետի մէջ։

—Ես Յորդանան գետը տեսել եմ,—մէջ մտաւ Անտոնը, որ ինքն էլ չիմացաւ ինչու ասաց այդ բանը։

Սերոբը շատ բան ունէր ասելու, բայց խելացի գտնվեց և լռեց։

Մինչ այդ, ուշքի էր եկել Ոսկեծնոտը, ոտքի կանգնել և փնտռում էր իր ապտակողին, սաստիկ յիշոցներ թափելով նրա օխտը պորտի հասցէին, Թոյլերի միակ զէնքը՝ ուժեղների դէմ։

Այդ միջոցին վազելով եկաւ եկեղեցու կարմրավիզ ռուս ժամկոչը, որ ցրի ամբոխին։

—Կորէք այստեղից, զզուեցրել էք ինձ աւելի քան դառն բողկ... և ինչ դև է բերել այդ Թռչուններին այստեղ. հեռացէ՛ք։

Սակայն տեսնելով ամբոխի յամառութիւնը և այն, որ նրան ընդունեցին ծաղր ու ծանակով, հին զինուորը բարւոք համարեց փոխել ֆրօնտը։

Նա մի քանի քարեր արձակեց դէպի երկու Թռչունները։

Ամբոխը հաւատացած էր, որ մի մահկանացուի քար ոչ կը հասնի և ոչ էլ կը դիպչի նրանց, ուստի ասիական եղանակի այպանող ձայներ էր հանում, դնելով մերկ կռները բերաններին և փչելով...

Թռչունները մազաչափ անգամ ուշադրութիւն չէին դարձնում ոչ ոքի վրայ, որովհետև գտել էին մի ամենաբարձր և իրանց իմանալով մի ամենաանվտանգ տեղ։ Երբ առաջին քարերը ընկան նրանց ոտքերի տակ, նրանք Թիւրիմացութեան մէջ ընկան և հարցական կերպով նայեցին նրանց, թէ այդ ինչ բաներ են Թռչում դէպ իրանց... յետոյ աւելի և աւելի զգալով ինչ-որ վտանգ, քիչ այս կողմ արին, քիչ այն կողմ, և երևաց որ մի կարճ խորհուրդ անելուց յետոյ համաձայնութեան եկան, ըստ որում նրանք շարժվեցին տեղից և բարձրացնելով Թևները Թափ տուին և պատրաստվեցին Թռչելու...

Զարմացած ամբոխի մէջ ընկաւ մի անասելի իրարանցում։

Յանկարծ իրօք որ երկու Թռչունները Թռան տեղներից և սլացան դէպի Թուրքերի Թաղերը։

Ճանապարհին նրանք քիչ մնաց նստէին հայոց եկեղեցու վրայ, բայց Թուրքերի աղաղակներից վախեցած նրանք առաջ սլացան։

Թուրքերը, բոլորովին հաւատացած՝ որ անհիւրընկալ քրիստոնեաներից փախած Թանկագին հիւրերը շնորհ տարին իրանց մէչիԹներից մէկի վրայ նստելու, խմբերով ուրա տուին և աճապարանքով շտապեցին իրանց Թաղերը... Բայց Թռչունները նետի արագուԹեամբ, առանց քաղաքի մէջ կանգ առնելու, Թռան գնացին, ծածկվեցին հարաւային հօրիզոնի հեռու հեռու անյայտուԹեան մէջ։

Սերոբը վաղուց էր հեռացել իր մեծ քայլերը ուղղելով դէպի մօլօկաններ։

Ամբոխը գլուխը քորելով ցրվեց, սպասելով այն օրին, Թէ երբ պէտք է Աստուծոյ պատիժը գայ մեղաւոր քաղաքի գլխին, և՝ անիծելով կարմրավիզ ռուս ժամկոչին, որ իր վարմունքով միմիայն արագացրեց բանը, այսինքն մի մեծ և կործանիչ երկրաշարժի տեղի ունենալը։

Սակայն արհաւիրքը եկաւ շատ ուշ, այն է 1901 Թուին, այսինքն ուղիղ 28 տարի այդ անցքից յետոյ, որից աւելի վնասվեցին Թուրքերը, որոնք բնաւ տեղեկուԹիւն չունէին ոչ լուսերականուԹիւնից և ոչ էլ երկնքի երեսին Թքող Ոսկեծնոտ Մաղաքի անտակտ վարմունքից։

Իսկ երկու Թռչունների մասին մինչ այսօր էլ ոչ ոք չը գիտէ Թէ ինչ Թռչուններ էին, և ճիշտը ասած նրանց մասին վաղուց են ամենքը մոռացել։

ԱԼԷՔՍԱՆԴՐ ԱԲԷԼԵԱՆ

# ԱՐԱԲԱԿԱՆ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆ

Մի անգամ Թիւրքական Բաղդադ քաղաքում մի վաճառական կորցնում է 200 ոսկով լիքը քսակը։

Նա յանձնարարում է հասարակական մունետիկին յայտարարել այդ, խոստանալով գտնողին տալ կէսը։

Ցայտնվում է մի նաւաստի, տալիս է նրան քսակը ոսկիներով և պահանջում է խոստացուած ընծան։

Մտածելով մի կերպ ազատուել, վաճառականը հաւատացնում է, որ բացի 200 ոսկուց քսակում կար նաև մի թանկագին քար, և որ նաւաստին խոստացուած ընծան ստանալու համար պիտի ներկայացնէ և ադամանդը։

Նաւաստին երդվում է, որ քար չի տեսել։

Բայց այնուամենայնիւ վաճառականը, մեղադրելով նրան ադամանդի յափշտակութեան մէջ, գանգատվում է դատաւորին։ Երբ դատաւորը անկարող է լինում վճռել գործը, նրանց տանում են մեծ-վէզիրի մօտ։

Լսելով վաճառականի գանգատը, վէզիրը կայացնում է հետևեալ դատավճիռը.

—Այն քսակում, որ դու կորցրել ես, բացի 200 ոսկուց կար մի թանկագին քար, մինչդեռ նաւաստին հաւատացնում է, որ իր գտած քսակում կային միայն ոսկիներ. հետևապէս, այդ քսակը այն չէ, որը դու կորցրել ես։ Որպէս զի երկրորդ անգամ չսխալուես, հրամայիր հասարակական մունետիկին յայտարարել, որ կորած է մի քսակ 200 ոսկով և ադամանդով։ Իսկ ինչ վերաբերում է նաւաստուն, նա պարտաւոր է 40 օր պահել գիւտը, իսկ յետոյ, երբ չի յայտնվի կորցնողը, այն ժամանակ նա կարող է համարել այն իր սեփականութիւնը։

Այդպիսով անիրաւ վաճառականը պատժվեց իր ագահութեան և անշնորհակալութեան համար։

Փոխ. ԱՂ. ԵՓՐԻԿԵԱՆ

# ՆՆՋԵՑԵԱԼԸ

(Գի Դը Մօպասանի)

---

Ես Նրան անսահման էի սիրում։ Ես չգիտեմ ինչու են սիրում։ Մի՞թէ տարօրինակ չէ տեսնել ամբողջ աշխարհում միայն մի էակ, միայն մի ցանկութիւն սրտում, միայն մի անուն շրթունքներում։ Հոգու խորքից է այդ անունը, ինչպէս ջուրը աղբիւրից, բարձրանում է անդադար շրթունքներից, կրկնում ես Նրան, անընդհատ շշնջում ես, ամեն տեղ և ամենուրեք, ինչպէս աղօթքը։

Մեր սիրոյ պատմութիւնը չեմ ուզում ես զրուցել։ Նա նոյն, միևնոյնն է միշտ։ Ես Նրան հանդիպեցի և սիրեցի։ Ահա և բոլորը։ Ես ապրել եմ ամբողջ տարին Նրա գգուանքների մթնոլորտում, Նրա փաղաքշանքների մէջ, Նրա գրկում, Նրա պաճուճանքների, Նրա հայեացքների մէջ, փաթաթված, շղթայուած, գերուած այն ամենից, ինչ որ Նրանից էր բղխում։

Ցերեկները և գիշերները ես չէի զանազանում, ես չգիտէի՝ կենդանի՞ եմ ես թէ՞ ոչ, առաջվայ տեղո՞ւմն եմ ես թէ՞ որևէ տեղ ուրիշ աշխարհում։

Նա մեռաւ։ Ի՞նչպէս։ Չգիտեմ ես, չգիտեմ ոչինչ։ Միանգամ, անձրևային երեկոյեան Նա թրջուած վերադարձաւ և առաւօտեան դէմ հազաց։ Մի շաբաթից յետոյ Նա պառկեց։ Չը գիտեմ ես՝ ինչ էր կատարվում։ Գալիս էին բժիշկները, ինչ-որ գրում էին և գնում էին։ Դեղեր էին բերում և ով-որ կին Նրան տալիս էր ընդունելու։ Նրա ձեռները տաքութեան մէջ էին, ճակատը ջերմ և թաց, աչքերը փայլում էին և տխուր էին։ Ես Նրա հետ խօսում էի, և Նա ինձ պատասխանում էր։ Միմեանց մենք ինչ էինք ասում, չգիտեմ. մոռացել եմ ես բոլորը։ Նա մեռաւ, և ես յիշում եմ Նրա պարզ վերջին թեթև, թոյլ հոգոց հանելը։ Հիւանդապահ կինը ճչաց, և բոլորը ես

հասկացայ։ Յետոյ ես ոչինչ չէի ըմբռնում։ Յիշում եմ քահանային, որ նրա մասին «ձեր սիրուհին» արտայայտեց։ Այդ ինձ՝ նրան վիրաւորել թուաց։ Քանի որ նա մեռել է, ո՞վ իրաւունք ունի այդ մասին իմանալու։ Նրան ես արտաքսեցի։ Միւսը շատ սիրալիր և կարեկցող էր. ես լալիս էի, երբ նրա մասին նա ինձ ասաց։ Ասում էին ինձ ինչ որ է հազարաւոր գործերի մասին, թաղման վերաբերութեամբ։ Բայց ես լաւ յիշում եմ դագաղը և թրխթխկոցը, որով նրան մեխում էին։ Աստուա՜ծ։

Նրան թաղեցի՜ն։ Նա՜ և այդ փոսո՜ւմ։ Յայտնուեցին մի քանի ընկերուհինրը. որպէս զի նրանցից ինձ ազատեմ, ես փախայ և թափառում էի փողոցներում երկար։ Յետոյ վերադարձայ ինձ մօտ։ Միւս օրը ճանապարհորդելու ես գնացի։

Երէկ ես Պարիզ վերադարձայ։

Երբ իմ սենեակը ես տեսայ, մեր սենեակը, անկողինը, կահ-կարասիքը, նոյն տունը, որտեղ մնացել է բոլորը, որ պահպանվում է մեռնողից յետոյ,—նորից ինձ պատեց իմ դառնութիւնս, և ես համարեա թէ քիչ էր մնում, որ բաց անեմ պատուհանը և դուրս շպրտեմ ինձ փողոցը։ Ես այն իրեղէնների մէջ մնալ չկարողացայ, որոնք մի ժամանակ շրջապատում էին նրան, և պատերը, որոնք ապաստարան էին տալիս նրան և որոնք պարտաւոր էին պաշտպանելու իրանց ծակոտիներում նրա մարմնի ատոմները, նրա շնչառութիւնը, նրան իրան։ Ես ձեռքս մեկնեցի գլխարկիս, որպէս զի դուրս գնամ։

Յանկարծ դռների մօտ նախասենեակում ես տեսայ մեծ հայելին, դրված այստեղ նրա ցանկութեամբ, որպէս զի իւրաքանչիւր անգամ, դուրս գնալուց, նայի իր արդուզարդին, ոտից մինչև գլուխ, կօշիկներից մինչ սանտրուածքը։

Ես ուղիղ կանգ առայ այդ հայելու առաջ, այնպէս յաճախ անդրադարձնող նրա կերպարանքը, որ նրա մէջ պէտք էր պահպանուէր նրա պատկերը։ Նրա առաջ ես կանգնած էի, դողալով, սևեռած նայելով այդ հարթ, դատարկ, խոր ապակուն, որը նրան պատում էր բոլորը, ինչպէս ես իմ կրքոտ հայեացքով գրկում էի նրան։ Ինձ թուաց, որ ես սիրում եմ այդ ապակին. ես նրան դիպայ—նա սառն էր, ինչպէս սառուցը... Ո՜հ, այդ յիշողութիւննե՜րը։ Վշտալի, այրող, սարսափելի կենդանի հայելի, բոլոր տանջանքներով մաշելով։ Բախտաւոր են մարդիկ, որոնց սիրտը հայելու նման է, ուր սայթաքվում են և սրբվում են անդրադարձումները, որոնք մոռանում են բոլորը, որ կար նրա մէջ, որ նրա առաջով անցաւ, որ ար-

տացոլեց նրա սիրոյ և անձնուիրութեան մէջ։ Ո՜հ, ինչպէ՜ս տանջանք։

Դուրս եկայ ես անզգայ և, չցանկանալով այն, ուղղուեցի գերեզմանատուն. ես որոնեցի նրա հասարակ գերեզմանը մարմարեայ խաչով և տապանագրով. «Նա սիրում էր, սիրելի էր և մեռաւ»։ Այնտեղ հողի մէջ նա արդէն փտե՜լ է։ Սարսափելի՜ է. ես երեսով հողի վրայ ընկայ և ողբում էի։ Այդպէս շատ երկար ես մնացի։ Թեւակոխում էր գիշերը։ Եւ այն ժամանակ մի տարօրինակ ցանկութիւն ինձ տիրեց, անբախտ սիրականի խելացնոր ցանկութիւնը՝ անցկացնելու նրա մօտ այս վերջին գիշերը, լալու նրա գերեզմանի վրայ։

Բայց կարող էին ինձ տեսնել և հեռացնել։ Ես խորամանկութեան դիմեցի։ Վերկացայ ես և սկսեցի մեռածների այդ քաղաքում թափառել։ Երկար ես թափառեցի։ Ինչպէ՜ս այդ քաղաքը փոքր է համեմատած կենդանի քաղաքի հետ։ Թէև որքա՜ն անգամ նրանք մեծ են այդ մեռելներից, քան կենդանիները։ Մեզ բարձր տներ են հարկաւոր, փողոցներ,—այսքան տեղը բոլորը չորս սերունդների համար, նայելով միաժամանակ աստուածային լոյսին, աղբիւրների ջրերը խմելով և դաշտերի հացովը սնուելով։ Իսկ մեռելների բոլոր սերունդների համար, մինչև մեզ բոլոր մարդկութեան սանդուղքների համար—համարեա ոչինչ, աննշան դաշտ։ Նրանց վերցնում է հողը, մոռացութեան է կլանում։ Եւ բոլորը։

Այդ գերեզմանատան վերջում ես տեսայ մի ուրիշը, աչքից ձգուածը. այնտեղ հին հանգստարանները արդէն հողի հետ էին հաւասարուել և խաչերն են նոյն իսկ փտում. այնտեղ շուտով կը թաղեն նորերին։ Այնտեղ բուսնում են առատութեամբ վայրի վարդերը, պինդ մութ մշտադալար նոճիները, վեհ և տխուր, սնուցուած մարդկային աճիւնով։

Բոլորովին ես մենակ էի։ Ծառի կանաչում ես ծածկուեցի և նրա խիտ մութ ճիւղերի մէջ թագ կացայ. սպասում էի ես, բռնած՝ ծառի բնից, ինչպէս խորտակումից փրկուածը բռնում է նաւի մնացորդներից։ Երբ բոլորովին մթնեց, ես դուրս եկայ իմ ապաստարանից և զգուշութեամբ սկսեցի, հանդարտ, անլսելի քայլերով շրջել այդ հողի վրայ, կշտացած՝ մեռելների աճիւնով։ Ես շատ թափառեցի, շատ երկար, և չկարողացայ նրա գերեզմանը գտնել։ Լարելով աչքերս, ձեռքս առաջ մեկնելով, ես ձեռքերով, ոտներով, ծունկերով, կուրծքով, ինքս գլխով ընկնում էի գերեզմանների վրայ և չկարողացայ գտնել նրա գերեզմանը։ Ինչպէս կոյրը ճանապարհը որոնելով, ես շօշա-

փում էի քարերը, խաչերը, երկաթեայ վանդակները, ապակեայ պսակները, չորացած ծաղիկներից պսակները։ Տառերի վրայ մատներս դնելով, ես կարդում էի անունները։ Ինչպի՜սի խաւար։ Նրա գերեզմանը ես չկարողացայ գտնել։ Լուսին չկար, մութ էր և ահը ինձ պատեց, սարսափելի ահը, այդ նեղ շաւիղներում, գերեզմանների կողքերի արանքներում։ Գերեզմաններ, ամեն տեղ գերեզմաններ։ Դէպի ձախ, դէպի աջ, իմ առաջ, իմ շուրջս և ամենուրեք գերեզմաննե՜ր։ Դողում էին իմ ծունկերս. Ես շրջել չկարողացայ և նստեցի գերեզմաններից մէկի վրայ։ Ես լսում էի, թէ ինչպէս էր իմ սիրտը խփում, բայց ես լսեցի և ինչ-որ ուրիշ, ինչ-որ անհանգիստ, անհաղորդելի աղմուկ։ Իմ խելագարուած գլխում նա՞ էր, կամ անթափանցելի խաւարի միջից հնչուեց, մարդկային դիակներով սերմանած, խորհրդաւոր հողի տակից։ Զորս կողմս ես մտիկ արեցի։ Չգիտեմ, ես այսպէս որքա՞ն ժամանակ մնացի։ Սարսափը ինձ թուլացրեց, համարեա առանց գիտակցութեան, վախից, մահվանը մօտ, պատրաստ էի ես բղաւել։

Յանկարծ ինձ երևաց, որ մարմարեայ տախտակը, որի վրայ ես նստած էի, շարժուեց, կարծես թէ նրան ով-որ բարձրացնում էր։ Ես մի թռիչքով յանկարծ երևացի հարևան գերեզմանի վրայ և տեսայ... տեսայ, որ քարը, որի վրայ մի քիչ առաջ ես նստել էի, ուղիղ կանգնեց, դուրս եկաւ գերեզմանից մեռելը, մերկ կմախք, իր կռացած մէջքով քարը դէն շպրտելով։ Ես այդ տեսայ, շատ լաւ տեսայ, թէև խորին գիշեր էր։ Խաչի վրայ ես կարդացի. «Այստեղ հանգչում է Ժակ Օլիվանը, 51 տարեկան կեանքում վախճանուելով։ Նա սիրում էր իր ազգականներին, ազնիւ էր և բարի և ննջում է խաղաղութեան մէջ»։ Եւ կարդաց մեռելը իր գերեզմանի վրայ գրուածը։ Յետոյ նա ճանապարհի վրայ բարձրացրեց պստիկ սրածայր քարը և ջանքով սկսեց քերել այդ տապանագիրը։

Իր դատարկ աչքերը տապանագրի վրայ դարձնելով, նա քերում էր նրան հանդարտ և յետոյ ոսկորի ծայրով, որը առաջ նրա ցուցամատն էր, վրան գրեց փայլ արձակող տառերով, նման պատի լուցկիի հետքի, հետևեալը. «Այստեղ հանգչում է Ժակ Օլիվանը, 51 տարեկան կեանքում վախճանուած։ Իր կոպտութեամբ, ցանկանալով ժառանգութիւն ստանալ, նա արագացրեց իր հօր մահը, տանջում էր կնոջը և երեխաներին, խաբում էր հարևաններին, գողանում էր, երբ հնարաւոր էր լինում, և աղքատութեան մէջ մեռաւ»։ Մեռելը վերջացրեց գրելը և իր աշխատանքի վրայ նայեց։

Շուտ գալով՝ տեսայ ես, որ բացուել են բոլոր գերեզմանները, դուրս են եկել բոլոր դիակները. բոլորը քերում էին սուտը, գրուած՝ մահարձանների վրայ բարեկամների ձեռքով, գրում էին ճշմարտութիւնը։ Եւ ես տեսայ, որ բոլորը իրանց մերձաւորների դահիճներն են եղել, նենգամիտներ, անպատիւ կեղծաւորներ, ստախօսներ, զրպարտիչներ և նախանձոտներ, որ նրանք գողանում էին, խաբում էին և կատարում էին ամեն տեսակ զազրելի գործեր։ Բարի հայրերը, հաւատարիմ ամուսինները, նուիրուած որդիները, անբիծ աղջկերքը, ազնիւ առևտրականները, դրանք իբրև թէ անբասիր տղամարդիկ են և կանայք։

Միաժամանակ բոլոր մեռելներն իրանց յաւիտենական օթևարանի դռների վրայ գրում էին անողորմ, սարսափելի և սուրբ ճշմարտութիւնը անյայտ աշխարհին կամ կեղծաւորութեամբ իրանց ձեռքով թաքցուած։ Անցաւ իմ երկիւղս։ Կիսաբաց գերեզմանների մէջ, կմախքների, դիակների մէջ, ես նրա մօտ գնացի, համոզուած՝ որ նրան իսկոյն կը գտնեմ։

Ես հեռուից նրան ճանաչեցի, չտեսնելով պատանքի մէջ փաթաթուած նրա երեսը։ Մարմարեայ խաչի վրայ, որտեղ դրանից առաջ ես կարդացի՝ «Նա սիրում էր, սիրելի էր և մեռաւ», ես կարդացի՝ «Նա պատրաստվում էր իր սիրականին խաբելու և ժամադրութեան գնալով՝ անձրևի տակ ընկաւ, մրսեց և մեռաւ»։

Առաւօտեան ինձ գերեզմանի մօտից անզգայ բարձրացրին։

Թարգ. ՅՈՎՀ. ԴԱՆԻԷԼԵԱՆՑ

# ՕՍՄԱՆԵԱՆ ՀԱՅԵՐԻ

# ԱԶԳԱՅԻՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ *)

# (1860—1910)

---

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՎԵՑԵՐՈՐԴ

*Օսմանեան սահմանադրութեան ներքին արժէքը.—Հայ երեսփոխանները.—Թիւրքիայի ներքին կացութիւնը.—Կուսակցութիւններ և նրանց նպատակը.—Լոնդոնի պրոտոկոլն (protocole) և պատերազմի յայտարարութիւնը.—Հայ կրօնապետների դիմումն անգլիական դեսպանին ընդդէմ Ռուսաստանի.—Օսմանեան խորհրդարանը.—Հայ երեսփոխանների ճառերը Ռուսաստանի դէմ.—Հայկական խնդիրը օսմանեան խորհրդարանում.—Խորհրդարանի արձակումը։*

*Օսմանեան սահմանադրութեան հրապարակումն արտակարգ ուրախութիւն պատճառեց հայերին։ Ժողովուրդն առհասարակ մեծ և անկեղծ յոյս էր դնում երկրի ապագայի վրայ, կատարուած այս հսկայ առաջադիմական քայլի առթիւ, որի բոլոր շարժառիթներին նա տեղեակ չէր։ Հայ մամուլը խանդավառ յօդուածներ էր նուիրում սահմանադրութեան և նրա յայտնի հեղինակներին։ Բանաստեղծներն իսկ իրանց բաժինն ունէին այս ընդհանուր ոգևորութեան մէջ, այն լիուլի յոյսով, որ վարչական նոր կարգն*—եթէ նա բարեխղճօրէն գործադրուէր—*վերջնականապէս, հաւասարութիւն, արդարութիւն պիտի մըտցնէր ընդհանուր հայրենիքում* **)։

---

*) «Արօր» 1910 թ. №№ 1, 2, 3, 4, 5, 6—7, 8—9—10 և 12.

**) Խրիմեան իր «Ժամանակ և խորհուրդք ինչ» գրքոյկում յափշտակուած գոչում էր. «... Հապա, հապա այն պատուաբեր ժամանակ, քեզ աւետիս կուտամ, ժողովուրդ. լռած լեզուդ և փակուած բերանդ բաց այսուհետև, խօսէ և գրէ որչափ սահմանադիր օրէնք քեզ ազատութիւն կուտայ...։ Ով բարեգուշակ ժամանակ, դու բարի եկիր մեր աշխարհ. քեզ կ'ակնկալէր

*Օսմանեան սահմանադրութիւնը բաղկացած էր 1 յօդուածից և իբրև հիմնական սկզբունք ընդունում էր բոլոր թիւրքիացիների հաւասարութիւնն (§ 17)* օսմանցի *ընդհանուր կոչման տակ (§ 8), անձի, բնակարանի անձեռնմխելիութիւնը (§ 22), մամուլի, ժողովների, ընկերակցութիւնների և ուսման ազատութիւնը։ Օսմանեան սահմանադրութիւնն՝ իսլամութիւնը պետական կրօն ճանաչելով հանդերձ՝ կատարեալ ազատութիւն էր տալիս այլ դաւանութիւններին և հաստատում էր ոչ-մահմեդական հասարակութիւնների վաղեմի, որոշ առանձնաշնորհումները (§ 11)։ Խորհրդարանը* (parlement) *բաղկացած էր՝* երեսփոխական ժողովից *(մէջլիսի մէբուսան,* chambre des députés), *և* ծերակոյտից (*մէջլիսի այեան,* senat)*։ Ծերակոյտի նախագահն և անդամները նշանակվում էին ուղղակի սուլթանից, բայց անդամների թիւը երեսփոխանների ընդհանուր թուի 1/3-ից աւելի պիտի չլինէր։ Երեսփոխաններն ընտրվում էին գաղտնի քուէարկութեամբ. 50,000 օսմանցի (միայն արու) ընտրում էին մի երեսփոխան (§ 65)։ Եթէ սուլթանն երեսփոխանական ժողովը արձակէր, նոր ընտրութիւնները պէտք է նշանակուէին ոչ ուշ քան 6 ամսի ընթացքում (§ 73)։ Երեսփոխանական ժողովը ընտրում էր իր միջից երեքական թեկնածու 1 նախագահի և 2 փոխ-նախագահի պաշտօնի համար, և սուլթանը դրանցից պիտի նշանակէր այդ պաշտօնների համար իր յարմար տեսած անձերին։ Երեսփոխանների անձն անբռնաբարելի էր (§ 79)։ Խորհրդարանն իրաւունք ունէր պետական ամբողջ բիւջէն քննելու, փոխելու, հաստատելու կամ մերժելու։ Գաւառական վարչութիւններն հիմնուած էին ապակենտրօնաց-*

---

*և կը սպասէր Թուրքաստանի հինաւուրց մայր, որ ամուլ էր և հրաշք ծնաւ... մեզ համար մի նոր մանուկ՝ Սահմանադրութիւն...։ Անհաւատալի այդ զարգացած մանուկն է, որ Եւրոպիոյ քաղաքակրթութիւն կը ներմուծէ մեր հին աշխարհ... և օսմանեան կայսրութեան տան ազատ գաւազան յայնժամ սահմանադրական թագով կը փառաւորի»։ Ապա փոքր ինչ մելամաղձոտ կերպով շարունակում է, մարգարէաբար գուշակելով մօտաւոր ապագան. «Եւ գիտէ՞ք ու կը տեսնէ՞ք քաջ, որ թէ՛ օտար և թէ՛ նոյն իսկ մեր աշխարհին մէջ դորա թշնամիներ շատ կան, որ կը շրջին ամենուրեք։ Գուցէ դարան գործեն... գողնան այդ մեր սիրական մանուկը և կամ անդէն իր խանձարուրին մէջ ճնշելով ունելիով խեղդեն...։ Եւ ի՞նչ կը լինի յայնժամ, գիտէ՞ք դուք, ո՞հ, յետինն չար քան զառաջինն...»։*

*Իսկ Թովմ. Թէրզեան՝ Միդհատ փաշային նուիրած իր քերթուածում «Առ ազատարարն» ասում էր, թէ նրա շնորհիւ՝*

*«... Ճշմարտութիւն ՚ւ ազատութիւն՝ օսմանեան անդնդակոր գահուն պատուար կանգնեցին»։*

*ման սկզբունքի վրայ (§ 108)։ Գաւառները պիտի ունենային իրանց տեղական վարչական ժողովները (մէջլիսի իդարէ)։ Իւրաքանչիւր գաւառակում (կազա)՝ամէն հասարակութիւն (Թիւրք, հայ, յոյն, և այլն) պիտի ունենար նաև իր առանձին խորհուրդը՝ իր կրօնական և բարեգործական հաստատութիւններն և կալուածքը կառավարելու համար (§ 111)։* Նախնական ուսումը պարտաւորիչ *էր բոլորի համար (§ 114) և վերջապէս սահմանադրութեան փոփոխութիւնը կարող էր տեղի ունենալ միայն երեսփոխանական ժողովի հաւանութեամբ (§ 116)։*

*Որովհետև դեռ ևս ընտրողական օրէնք գոյութիւն չունէր, ուստի առաջին օսմանեան երեսփոխաններն ընտրուեցին տեղական վարչական ժողովների ձեռքով և այնպիսի եղանակներով, որ նրանք այս առաջին անգամ աւելի նշանակովի էին, քան ընտրովի։ Խորհրդարանի բացման ժամանակ նրանց ընդհանուր թիւն 86 էր, որից 38-ը քրիստոնեայ։ Գաւառներն ուղարկել էին հետևեալ հայ երեսփոխանները. Զմիւռնիայից—Յակոբ էֆէնդի Սպարթալեան, Բրուսայից—Նավրուեան էֆէնդի, Ադրիանուպօլսից—Ռուբէն էֆ., Հալէպից—Մանուկ էֆ. Խարաճեան, Սեբաստիայից—Յակոբ էֆ. Շիրինեան, Տիգրանակերտից—Յովսէփ էֆ. Գազազեան, Կարնից և նահանգից—Դանիէլ էֆ. Խարաճեան և Համազասպ էֆ. Պալլարեան, Ադանայից—Պըղտիկեան էֆէնդի։*

*Իսկ մայրաքաղաքում հայերն աւելի փառաւոր յաղթութիւն էին տարել։ Ընտրուել էին բժ. Սերվիչէն, Սեպուհ Մագսուտ և Յովհ. Ալլահվերտի։ Այս վերջինը փոխ-նախագահ ընտրուեց, իսկ Սերվիչէն անցաւ ծերակոյտ, ուր մի ուրիշ հայ անդամ ևս էր նշանակուել սուլթանից՝ Միհրան բէյ Տիւզեան։*

*1877 Թ. մարտի 19-ին Աբդիւլ Համիդ անձամբ բացաւ խորհրդարանն իր պալատում, մեծ հանդէսով։ Բացի ծերակոյտի անդամներից և երեսփոխաններից ներկայ էին նաև բոլոր մինիստրները, դեսպանական մարմինը, քրիստոնեայ պատրիարքները, նոյնպէս և բարձր պետական պաշտօնեաներ։ Աբդիւլ Համիդի անունից կարդացուած գահական ճառը գեղեցիկ խօսքեր և խոստումներ էր բովանդակում սահմանադրութեան և նրա նպատակների անթերի գործադրութեան նկատմամբ։ «Հարկաւոր համարեցի,—ասում էր նա,—իմ հպատակներիս ազատութիւնն և հաւասարութիւնն ապահովել,* իդարէի քէյֆիյէ-*ին (քմահաճ վարչական դրութեան) վերջ տալ...»։*

*Բայց չնայելով սահմանադրութեան հրատարակուելուն, մանաւանդ Թէ մասամբ այս իսկ պատճառով, Թիւրքիայի ներ-*

քին դրութիւնը շարունակում էր տագնապալից լինել։

Վերջին տարիների քաղաքական դէպքերն և սահմանադրութեան շնորհած խօսքի և մամուլի ազատութիւնը մեծ մըղում տուին Կ. Պօլսի ժողովրդի ինքնագիտակցութեան, և երկրի գործերով զբաղուող և հետաքրքրուողների թիւն զգալապէս մեծացաւ։ Այս վիճակը բնականաբար առաջ բերաւ կարծիքների և տեսութիւնների տարբերութիւններ, որոնցից ծագեցին որոշ համախմբումներ։ Այս համախմբումներ կազմողները, գոնէ մեծագոյն մասամբ, դեռ այնչափ հասունացած չէին, որ քաղաքական կուսակցութիւններ կազմակերպէին որոշ և ընդարձակ ծրագիրներով, բայց միմեանցից զգալապէս տարբերուող և նոյն իսկ միմեանց ուղղութեան հակառակ համախմբումների և կուսակցութիւնների գոյութիւնն աներկբայ էր։ Սրանք մօտաւորապէս հետևեալներն էին.

1) Ռուսասէրներ, բաղկացած Աբդիւլ Ազիզի տիրապետութեան վերջին շրջանի ազդեցիկ անձերից, որոնք դժգոհ էին կատարուած յեղափոխութիւնից. սրանց նպատակն էր Աբդիւլ Ազիզի վերջին սադրազամ Մահմուդ Նէդիմ փաշային աքսորից վերադարձնելով՝ à tout prix ռուսասիրական քաղաքականութիւնն առաջացնել։ Այս կուսակցութիւնը հակասահմանադրական էր։

2) Սահմանադրական-ազգայնականներ, որոնք հետևողներն էին Միդհատ փաշայի։ Սրանք, ինչպէս արդէն բացատրել ենք, անկեղծ կերպով ցանկանում էին երկրի մէջ տիրող զեղծումների և բռնութիւնների բարձումն և ամեն կերպ աշխատում էին սահմանադրութեան միջոցով Թիւրքիան բարեկարգել առանց օտար միջամտութեան։ Բայց նրանք միևնոյն ժամանակ ջերմ պաշտպան էին մահմեդական տարրի գերիշխանութեան։ Միդհատականներն էին, որ նախապատիւ համարեցին պատերազմի վտանգներին ենթարկուել, քան թէ ընդունել եւրոպական միջամտութիւնը յօգուտ քրիստոնեաների կամ որևէ մասնաւոր նահանգի։

3) Պահպանողական հին-թիւրքեր, որոնց նպատակն էր ջնջել սահմանադրութիւնը, գահընկէց անել Աբդիւլ Համիդին, ճնշել և ջլատել քրիստոնեայ տարրը, նոյն իսկ ընդհանուր ջարդ կազմակերպելով։ Նրանց նպատակն էր՝ այս կերպով միանգամից ազատել մահմեդական Թիւրքիան գեավուր եւրօպացիների ձեռից։ Այս ծայրայեղ կրօնամոլներն, որոնք, բարեբախտաբար, փոքրագոյն թիւ էին կազմում համեմատելով միւս երկու Թիւրք կուսակցութիւնների հետ, ջանքեր էին գործ դնում

միանալու առաջին, այն է՝ ռուսասէրների կուսակցութեան, որպէսզի հաւասար ընդդիմադիր ոյժ կազմեն սահմանադրական-հետ*)։

Վերջապէս կար և մի այլ՝

4) Առաջադիմական կուսակցութիւն, խսկապէս ազատամիտ Թիւրքերից կազմուած։ Հայերի և այլ քրիստոնեաների ստուար մեծամասնութեան համակրութիւնն այս կուսակցութեան կողմն էր, որին և աջակցում էին ի պահանջել հարկին։ Յառաջադիմականները, տեսնելով որ միմեանց յաջորդող բարենորոգչական ոչ մի խաթթը հիմայուն, ոչ մի հանդիսաւոր խոստում ի կատար չէր ածուած և յոյս էլ չկար, թէ Թիւրքերն իրանք իրանց ձեռքով երբևիցէ կարենային կամ կամենային կարգ ու կանոն մտցնել երկրի մէջ, ձգտում էին, որ եւրոպական տէրութիւնները միջամտեն և այնպիսի մի տեղական վարչական սիստէմ մտցնեն, որ անխտիր և հաւասար իրաւունք տայ Թիւրքիայի բոլոր բնակիչներին։

Սակայն այն Թիւրք փաշաները, որոնք իրանց ձեռքն էին առել կառավարութեան ղեկը Միդհատի աքսորումից յետոյ, խսկապէս այս կուսակցութիւններից ոչ մէկին չէին պատկանում, այլ կազմում էին մի՝

5) Պալատական խումբ, որի անդամները վայելում էին Աբդիւլ Համիդի վստահութիւնը։ Սրանք զուրկ էին վարչական ընդունակութիւնից, գործում էին խարխափելով, չունէին որևէ որոշ ուղղութիւն և այս պատճառով էլ Նրանց քաղաքականութիւնը տարտամ էր և անհետևողական։

Այսպիսի միմեանց ընդդէմ հոսանքներից տարուբերուած խումբերը Ներքին փոխադարձ խուլ պայքարով էին զբաղուած։ Կար անշուշտ դեռ մի մեծ բազմութիւն, որ հեռու էր այս «կուսակցութիւններից», միակ բաղձանք ունենալով այն, որ երկրում կարգը չխանգարուի և արդար կառավարութիւն հաստատուի, բայց ինքնին ոչ մի Ներգործական դեր չէր կատարում այդ ուղղութեամբ։ Կացութիւնը չափազանց լուրջ էր և լարուած. Նա չէր կարող երկար տևել այսպէս։ Երկրի վիճակն որոշող վճռական ժամը պէտք է հնչէր, և Նա չուշացաւ։

---

*) Այս պահպանողական հին-Թիւրքերը դեռ ևս Կ. Պօլսի դեսպանախորհուրդը չգումարուած դաւադրութիւն էին կազմել՝ նախ տապալել Աբդիւլ Համիդին, որովհետև միդհատականների գահ հանած սուլթանը լինելով խոստացել էր սահմանադրութիւն հրատարակել, և ապա սպանել Միդհատին և Նրա խորհրդակից շէյխ-իւլ-իսլամին։ Դաւադրութիւնն իր ժամանակին իմացուելով խափանուեց և դաւադիրներից 400 հոգի աքսորուեցին։

Եւրոպական պետութիւնները՝ Կ. Պոլսի դեսպանախորհրդի անաջողութիւնից յետոյ՝ իբրև վերջին փորձ երկրորդ անգամ խորհրդակցութիւն ունեցան Լոնդոնում և 1877 թ. մարտի 19/31-ին արձանագրութիւն (պրոտոկոլ, protocole) կազմեցին, թէ Թիւրքիան խաղաղեցնելու ձեռնարկող պետութիւններն ընդունում են, որ այս նպատակին հասնելու համար ամենաապահով միջոցն է՝ խնամքով հսկել, որ օսմանեան կառավարութիւնն իր խոստացած բարենորոգումները գործադրէ. իսկ եթէ այս անգամ ևս նրանք յուսախաբ լինեն, այն ժամանակ, «պիտի խորհրդակցեն, թէ ինչ անհրաժեշտ միջոցներ պէտք են քրիստոնեայ ժողովուրդների բարեկեցութիւնն և ընդհանուր խաղաղութիւնն ապահովելու համար»։ Այս «խնամքով հսկելու» և «անհրաժեշտ միջոցների» մասին որոշումներն, որոնք ապացուցանում էին, թէ եւրոպացիք չէին հաւատում Թիւրք կառավարութեան խոստումներին և առհասարակ անկեղծութեանը, սաստիկ զայրացրին Կ. Պոլսի ղեկավարող շրջանները. Թիւրք կառավարութիւնը մերժեց նաև Լոնդոնի «արձանագրութիւնը»՝ հիմնուելով Պարիզի դաշնագրի 9-րդ յօդուածի վրայ, որ իրաւունք չէր տալիս եւրոպացիներին միջամտել Թիւրքիայի ներքին գործերին։ Արտաքին գործերի մինիստրը Սաւֆէթ փաշան՝ խրոխտաբար գրում էր Թիւրք դեսպաններին (մարտ 29/ապր. 9). «Ոչ մի նկատում մեզ չի կարող արգելել. մենք կը գործադրենք խոստացուած բարենորոգումներն՝ առանց նահանգի, կրօնի և դասակարգի զանազանութեան։ Մենք բողոքում ենք այն ստորացնող խնամակալութեան դէմ, որ Եւրոպան ուզում է մեր վրայ դնել»։

Այս ինքնավստահ մերժողական պատասխանն՝ իր արդարացումը գտնում էր միայն այն գաղտնի հակառակութեան և փոխադարձ անվստահութեան մէջ, որ տածում էին Ռուսաստանն և Անգլիան միմեանց հանդէպ։ Այս վերջինը բացարձակապէս յայտնել էր, թէ ինքը «չէ միանալու միւս տէրութիւնների հետ Թիւրքիայի վրայ ճնշում գործ դնելու համար և ոչ էլ իր հաւանութիւնը կը տայ, որ մի ուրիշ տէրութիւն ճնշում գործ դնէ»։ Բայց Թիւրք կառավարութիւնը չափազանց սխալվում էր իր հաշիւների մէջ։ Ալեքսանդր Բ. Ազատարար կայսրն՝ երբ տեսաւ, թէ Թիւրքիան Եւրոպայի առաջարկած վերջին միջոցն էլ չընդունեց, ետ չընկրկեց և ապրիլի 6/19-ին պատերազմ հրատարակեց Թիւրքիայի դէմ, «զէնքի ոյժով ձեռք բերելու համար այն, ինչ որ պետութիւնները չէին կարողացել անել համոզել ջանալով»։

Պատերազմի յայտարարութիւնից անմիջապէս յետոյ կա-

տավարչական շրջանների թելադրութեամբ մի առ մի բրիտանական դեսպանին ներկայացան Թիւրքահպատակ քրիստոնեայ հասարակութիւնների հոգևոր պետերը՝ հայ-լուսաւորչական պատրիարքը, հայ-կաթօլիկ պատրիարքի փոխանորդը, սիրիացիների պատրիարքը, յունական պատրիարքարանի գործակատարն և այլն։ Սրանք բոլորն էլ միևնոյն յայտարարութիւնն էին անում Թիւրքիայի բարեկամ պետութեան ներկայացուցչին, այն է՝ թէ իրանք բոլորն էլ հակառակ էին Ռուսաստանին և նախընտրում էին մնալ Թիւրք կառավարութեան հպատակ, քան թէ ռուսական կառավարութեան ենթարկուել, որովհետև Թիւրքիայում նրանք դաւանութեան կատարեալ ազատութիւն էին վայելում, մինչդեռ ռուսական կառավարութիւնը կրօնական հարցերում անհանդուրժող էր։ Այս դիմումների բուն նպատակն էր ցոյց տալ, թէ Ռուսաստանի առաջ բերած պատճառը պատերազմի համար, այն է՝ քրիստոնեաների պաշտպանութիւնը ճիշտ չէր, քանի որ իրանք քրիստոնեաները հակառակ էին Ռուսաստանին, և այս կերպով Թիւրքիայի կողմը գրաւել Եւրոպայի, մանաւանդ Անգլիայի համակրութիւնն, որ շատ կարևոր էր։

Առաջ բերենք Ներսէս պատրիարքի յայտարարութիւնն անգլիական դեսպանին, որ այնքան աղմուկ հանեց և դժգոհութեան առիթ տուեց նրա դէմ, ժողովրդի մէջ։

Ապրիլի 14/26-ին (1877) անգլ. դեսպան միստր Լէյըրդ հետևեալն է գրում կոմս Դէրբիին.

«Այսօր ինձ այցելեց հայ-գրիգորեան պատրիարքը։ Նորին սրբազնութիւնն եկել էր շնորհաւորելու իմ գալուստն և իր ժողովրդի վիճակի և կարիքների մասին ինձ հետ մտերմաբար խօսելու։ Նա ասաց հետևեալը. հայ ազգը շատ աւելի կը գերադասէ օսմանեան վարչութեան տակ մնալը, քան թէ ռուսական իշխանութեան ենթարկուելը։ Հայերը Թիւրքիայում բոլորովին ազատ են իրանց կրօնը դաւանելու և գործադրելու, մինչդեռ Ռուսաստանում այդպէս չէ. և նրանք ապացոյցներ ունեն, որ Ռուսաստանը մտադիր է ճնշել և հարկադրել, որ հայերն իրանց հայրերի հաւատը թողնեն և յունադաւանութիւնն ընդունեն։ Բայց հայերն որոշել են երբէք այդպէս բան չանել։ Հայերի շահերը նոյնն են թիւրքերի շահերի հետ, և նրանք յոյս ունեն աւելի զարգանալ և աւելի մեծ ազատութիւն վայելել օսմանեան հպատակ մնալով, քան թէ ռուսահպատակութիւն ընդունելով։ Կ. Պօլսի և յարակից նահանգներում բնակւող հայերը բնաւ գանգատի տեղի չունեն. սրանք պատուաւոր և կարևոր պաշտօններ են գրաւած և մեծ ազդեցութիւն ունեն

երկրի կառավարութեան և վարչութեան մէջ...։ Նորին սրբազնութիւնը պնդեց, թէ Թիւրք կառավարութիւնը պարտաւոր է հայ ժողովրդի մէջ տիրող այս ոգին քաջալերել, ամեն հնարաւոր հովանաւորութիւն և պաշտպանութիւն ցոյց տալով հայերին։ Թիւրք կառավարութիւնը թող չմոռանայ, որ Էջմիածնի կաթողիկոսն, որ դեռ ահագին ազդեցութիւն ունի հայ ազգի վրայ, ռուսահպատակ է, և թէ ռուսական կառավարութիւնը Հայաստան արշաւող իր բանակում հայերին դիտմամբ բարձր և վստահելի պաշտօններ է տուած, որպէս զի հայ քրիստոնեաների աջակցութիւնն և համակրութիւնը գրաւէ։ Նորին սրբազնութիւնը հաւատացած է, որ ռուսական կառավարութեան այս նպատակը չի իրագործուի, եթէ Բ. Դուռը փաստերով ցոյց տայ, թէ մտադիր է հայերի հետ արդարութեամբ վարուել և նրանց կեանքն ու գոյքը պաշտպանել։ Եթէ Բ. Դուռն այսպէս վարուի, նա կարող է հայերից մի ազգային պահակախումբ (milice) կամ քաղաքային պահակների գունդ կազմել, որ մահմեդականների հետ միասին իրանց ընդհանուր հայրենիքն և քաղաքները կը պաշտպանեն ռուս արշաւողների դէմ...»*)։ Անգլ. դեսպանը չափազանց ուրախանում է Ներսէսի այս հակառուսական, ուղղակի անքաղաքագիտական յայտարարութիւնից, որի ամբողջ արդիւնքն այն է լինում, որ դեսպանն իր թարգմանին ուղարկում է Սավֆէթ փաշայի մօտ, խորհուրդ տալու նրան որ Թիւրք կառավարութիւնը գոհացնէ հայերին, այն Սավֆէթ փաշայի մօտ, որի գիտութեամբն էր որ թէ Ներսէս և թէ միւս կրօնապետները դիմել էին Լէյըրդին։ Քիչ ժամանակ վերջն, երբ անգլ. դեսպանի այս զեկուցագիրը «Կապոյտ Գրքից» թարգմանուելով հրատարակուեց Կ. Պօլսում, ժողովուրդն և մամուլն ընդհանրապէս, ինչպէս նաև ազգային երեսփոխաններից ոմանք չծածկեցին իրանց դժգոհութիւնը։ Այս գանգատն այնպիսի ըզգալի չափեր ընդունեց, որ Ներսէս ստիպուած եղաւ ոչ միայն ինքն իրան արդարացնել, յայտարարելով թէ իր խօսքերը սխալ են հաղորդուած, այլ և իր ստորագրութեամբ այդ իմաստով պատասխան-հերքում հրատարակել. բայց այնու ամենայնիւ Ներսէսի սկզբնական յայտարարութիւնն իբրև զէնք ծառայեց Բ. Դրան և անգլ. դեսպանի ձեռքը։ Միւս հայազգի պատրիարքն, Հասունեան, անձամբ չգնաց դեսպանի մօտ՝ հիւանդութիւն պատճառաբանելով. Նրա կողմից այցելեց փոխանորդն իր հետևորդներով։ «Հայ-կաթօլիկ պատրիարքի փոխանորդ եպիսկոպոսն և

*) «Blue Book». Turkey, № 25 (1877), էջ 164.

իր հետեւորդները,—պատմում է միստր Լէյըրդ,—շնորհաւորեցին իմ բարի գալուստն յանուն պատրիարքի և կաթօլիկ հայ ժողովրդի, միևնոյն ժամանակ շնորհակալութիւն յայտնելով այն աջակցութեան և պաշտպանութեան համար, որ Թագուհու կառավարութիւնը միշտ ցոյց է տուել հայ ազգին։ Նրանք խիստ լեզուով խօսեցին ռուսական վարչութեան և ազդեցութեան ենթարկուելու դէմ և բաղձանք յայտնեցին Թիւրքահպատակ մնալ։ Նրանք, միևնոյն ժամանակ, միւս քրիստոնեայ հասարակութիւնների պետերի նման, հարկաւոր էին համարում, որ Թիւրքական յոռի և փչացած վարչութիւնը բարեկարգուի և սուլթանի բոլոր հպատակների համար հաւասարապէս՝ կատարեալ և անկողմնապահ արդարութիւն ապահովուի»։

Քրիստոնեայ կրօնապետների գործածած այս խիստ լեզուն, մանաւանդ այն միաձևութիւնն, որ նշմարվում էր նրանց յայտարարութիւնների մէջ, համոզել է անգլիական դեսպանին, թէ նրանց այս հակառուսական զգացմունքն անկեղծ է, «եթէ նոյն իսկ,—ասում է,—նրանց գործածած բացատրութիւնը փոքր ինչ չափազանցված համարենք»*)։

Անգլիական կառավարութեան համար քրիստոնեայ հոգեւոր պետերի յայտարարութիւնների չափ՝ եթէ ոչ աւելի՝ թանկագին էին այն ուղերձներն, որ դեսպանն ստացաւ նոյն ինքն օսմանեան խորհրդարանից, երկու անգամ, և այս երկու անգամին էլ հայ-օսմանեան երեսփոխանները գործունեայ դեր են կատարել։ Նախ՝ ապրիլի 3/15-ին նրան ներկայացաւ մի պատգամաւորութիւն 6 երեսփոխանից բաղկացած, որ նրան յանձնեց բարի գալուստի առթիւ մի գրաւոր շնորհաւորութիւն, որին մասնակցողների և ստորագրողների մէջ էր Սեպուհ Մագսուտեան։ Սա էր, որ խօսում էր յանուն իր ընկերակիցների և ջերմագին հաւատացնում էր, թէ «ամեն դաւանութեան քրիստոնեայ հասարակութիւնները վայելում են և անշուշտ պիտի վայելեն անհամեմատ աւելի մեծ կրօնական ազատութիւն և զարգացման աւելի մեծ յոյս ունեն Թիւրքական իշխանութեան տակ, քան թէ ռուսական»։ Բայց Մագսուտեան միևնոյն ժամանակ խիստ կերպով դատապարտեց Թիւրքիայի յոռի և ապականուած վարչութիւնն և կեանքի, գոյքի ապահովութեան բա-

---

*) Անդ. էջ 126։ Ուշադրութեան արժանի է, որ յոյն պատրիարքի ներկայացուցիչների յայտարարութիւնները չեն հրատարակուած «Կապոյտ Գրքում»։

ցակայութիւնը*)։ Երկրորդ՝ երբ անգլիական կառավարութիւնը, պատերազմի հրատարակուելու մասին իշխան Գորչակովի շրջաբերականին՝ Թիւրքիայի համար նպաստաւոր բովանդակութեամբ մի պատասխան ուղղեց, օսմանեան խորհրդարանն ապրիլի 30-ին աւելի հանդիսաւոր կերպով շնորհակալութեան մի պաշտօնական ուղերձ քուէարկեց միստր Լէյըրդին, որի մէջ միևնոյն ժամանակ դառն գանգատներ կային Ռուսաստանի դէմ։ Ուղերձը մատուցին խորհրդարանի երկու փոխ-նախագահներն, որոնց մէկը հայ՝ Յովհ. էֆ. Ալլահվերտի։ Այս ուղերձի մէջ, որ բաւական ընդարձակ է, երկու տեղ կայ, որոնք ամփոփում են և պարզում նրա ամբողջ raison d'être-ն։ Ուղերձն սկսում է այսպէս. «Բազմաթիւ նախկին փորձերից յայտնի է, որ ամեն անգամ, երբ օսմանեան կայսրութեան մէջ առաջադիմութեան նշան է երևացել, Ռուսաստանը՝ մեր ազգի այս դարաւոր թշնամին՝ անմիջապէս որևէ չնչին առիթ է գտել մեզ դէմ պատերազմ հրատարակելու։ Ահա այս փորձերից դատելով, այս անգամ ևս նրա կողմից յարձակման էինք սպասում օսմանեան ազգի դէմ»։ Այս խօսքերն ակնարկում են Թիւրքերի մէջ տիրած այն՝ ոչ-բոլորովին անհիմն համոզումն, թէ Ռուսաստանը թշնամական աչքով էր դիտել Թիւրքիայի սահմանադրական երկիր դառնալը...։ Խօսելով քրիստոնեաների պաշտպանութեան խնդրի մասին, օսմանեան ներկայացուցչական ժողովն ասում էր. «Ոչ-մահմեդական ժողովուրդներն, որոնք «օսմանցի» տիտղոսն առին, և զանազան քրիստոնեայ հասարակութիւններն, որոնք կատարեալ ազատութիւն են վայելում օսմանեան կայսրութեան հովանու տակ, սոսկումով և քամահրանքով լսեցին մեր թշնամու պնդումը, թէ նա ուզում է եղել պաշտպան հանդիսանալ քաղաքակրթութեան և առաջադիմութեան, որն իրանք արդէն վայելում են, ինչպէս քանիցս յայտարարել են...»։ Այսպիսի ջերմ համակրական ուղերձներ ստանալուց յետոյ՝ մասամբ հասկանալի է դառնում այն լի գովասանքով զեկուցումն, որ պ. Լէյըրդ գրում է օսմանեան խորհրդարանի նկատմամբ**), այն ժամանակ, երբ ուրիշ եւրոպացի հանդիսատեսներ բոլորովին տարբեր կարծիք էին յայտնում այս մասին, և նոյն իսկ անգլիական մամուլն անխնայ քննադատում էր խորհրդարանի նախագահին և առհասարակ ամբողջ օսմ. սահմանդրութիւնը։

*) Անդ. էջ 172.

**) «Blue Book». Turkey, № 26 (1877), էջ 96—97.

*Օսմանեան խորհրդարանում հայ երեսփոխանները կարևոր դերք գրաւեցին իրանց հմտալից ճառերով և օսմանեան հայրենիքին ջերմ անձնուիրութեամբ։ Նրանք իրանց թիւրք հայրենակիցների հետ միասին եռանդագին մերժում էին* օտար միջամտութիւնն *երկրի ներքին գործերում։*

*Երբ ապրիլի 13-ի նիստում խորհրդարանը քննում էր Ռուսաստանի պատերազմ հրատարակելու ծանրակշիռ խնդիրը, Հալէպի երեսփոխան Մանուկ Խարաճեան մեծ եռանդով հերքում է Ռուսաստանի առաջ բերած շարժառիթը, թէ քրիստոնեաների պաշտպանութեան համար է պատերազմ յայտարարել, և բուռըն ոգևորութեամբ բացատրում է, թէ հայ ժողովուրդը, մանաւանդ Հալէպի իր ընտրողները, պատրաստ են ամեն կերպ զոհողութիւն յանձն առնել իրանց հայրենիքն և իրանց սիրելի թագաւորին օտար յարձակման դէմ պաշտպանելու համար։ Նոյնը կրկնում է Ս. Մագսուտեան, և բովանդակ խորհրդարանն եռանդագին ծափահարում է նրանց։ Կարնի երեսփոխանները՝ Պալլարեան և Խարաճեան չեն ուզում ետ մնալ իրանց ընկերակիցներից և աւելացնում են, թէ կարնեցիք արդէն մի տարուց ի վեր է զէնքի են դիմել իրանց իսլամ հայրենակիցների հետ ընդհանուր հայրենիքը պաշտպանելու համար արտաքին թշնամու դէմ և թէ Դանիէլ Խարաճեան անձամբ հասարակ զինուոր է գրուել այդ նպատակով։ Նոյն ոգով խօսում է նաև Ադրիանուպօլսի հայ երեսփոխանը*)։ Իրանց հայ պաշտօնակիցներից ետ չեն ուզում մնալ միւս յոյն և այլ ոչ-մահմեդական երեսփոխաններն, որով բոլորն էլ արժանանում են մահմեդական երեսփոխանների և կառավարութեան ջերմ շնորհակալութիւններին։*

*Սակայն այս պատկերը փոխվում է, երբ Կ. Պոլիս լրեր են հասնում, թէ պատերազմի դաշտի վրայ օսմանեան անկանոն զօրքն և քիւրդերը սոսկալի արհաւիրք են տարածել հայ ժողովրդի վրայ, ամբողջ գիւղեր աւերի ենթարկելով և հազարաւոր հայ գիւղացիներ սրից անցընելով։ Այս կոտորածի լուրը խորապէս ցնցեց օսմանցի-հայ երեսփոխաններին, և նրանք*

---

**) Ներսէս պատրիարք, որ համախոհ կերպով էր գործում այն միջոցին օսմանեան խորհրդարանի հայ երեսփոխանների հետ, ռուսական պատերազմի առթիւ մի շրջաբերական կոնդակ հանեց և Ս. Գրքից վկայութիւններ բերելով յորդորում էր հայ ազգը հաւատարիմ հպատակ մնալ և աղօթել առ Աստուած «վասն պահպանութեան անգին կենաց օգոստափառ թագաւորին օսմանեանց՝ սուլթան Համիդ Բ.-ի և վասն անդրդուելի զօրութեան և յաջողութեան օսմանեան արիագունդ բանակին»։ («Մասիս», 1877 ապրիլ 28).*

խորհրդարանի յունիսի 14-ի նիստում չքաշուեցին իրանց սրտի ամբողջ դառնութիւնը թափել կառավարութեան գլխին։ Այն հայ երեսփոխանն (Պալլարեան), որ հազիւ 2 ամիս առաջ այնքան եռանդուն կերպով պաշտպանում էր թիւրք բանակն, այժմ նոյնքան եռանդով յարձակվում էր գաւառական թիւրք վարչութեան և քիւրդերի վրայ. նա պատմում էր մանրամասն՝ նըրանց արարքը պատերազմից առաջ. «Ասոնց (քիւրդերի) գըլխաւորներին երբեմն կը բռնուէին,—ասում էր նա,—և կը բանտարկուէին, բայց շատ չանցած թող տրուելով աւելի կատաղութեամբ իրենց առջի գազանութիւնները ձեռք կառնէին։ Վալիներէն և միւթէսարըֆներէն շատեր ալ կան, որ այդ քրդաց գործակից և համախոհ գտնուած են, որոնց անունը հարկ չեմ տեսներ այժմ յայտնապէս յիշատակելու։ Իսկ շատ աղէկ գիտեմ, որ այդ քիւրդերուն ազատ թողնուելն ամեն անգամ 10,000 ոսկիի կըլլար իրենց։ Երբ կը հարցնէի կուսակալներուն, թէ ինչո՞ւ քիւրդերը չեն պատժուիր, որոնց համար երկու վաշտ զօրք բաւական է, և այսպէս անպատիժ թոյլ կը տրուի, որ շարունակեն իրենց չարագործութիւնները, կը պատասխանէին ինձ, թէ այս գործոյն մէջ հիքմէթը հիւքիւմէթ կայ (վերապահեալ պետական գաղտնիք)։ Վերջերս խելամուտ եղայ, թէ ինչ է եղեր այս «պետական գաղտնիք» ըսածնին։ Այդ հիքմէթը սա է եղեր, թէ կառավարութիւնը անոր համար այդ վիճակի մէջ կը պահէ եղեր քիւրդերը, որ երբ հայերը Հայաստանի մէջ ապըստամբական շարժում մը ընեն, քիւրդերը զանոնք զսպեն, և մէկ մ'ալ որ՝ եթէ պատերազմ բացուի ռուսաց դէմ, քիւրդերը օսմանեան բանակին կամաւոր զօրք օգնութիւն պիտի ընեն եղեր։

«Ահա յետոյ յայտնապէս տեսնուեցաւ, թէ այդ քիւրդերն ի՞նչ տէրութեան պիտի օգնէին, որո՞նց զօրքերն են եղեր. այն քիւրդերն, որք խաղաղութեան ժամանակ անպատիժ կերպով և անխղճօրէն հայերը չարչարեցին և կեղեքեցին, հիմա ալ պատերազմի ժամանակ տէրութեան մատնութիւն և դաւաճանութիւն կընեն։ Ասոնք իրենց ի՞նչ օգտին և ի՞նչ յատկութեանցը համար արդեօք այսքան պաշտպանութիւն գտած էին, մինչև Հայաստանի բնակչաց արիւնը ծծելու չափ... ուրեմն ասոնց չարեաց և աղէտիցը վախճան տալու համար՝ անմիջական միջոցներ ձեռք առնել հարկ անհրաժեշտ է»*)։

Երկու յոյն երեսփոխան ազդուապէս պաշտպանում են

*) Հ. Մինաս Նուրիխան. «Ժամանակակից Պատմ.», մասն Գ., 1907, էջ 455—456.

հայերին։ Յոյն Սուլիդէս առաջինն է խօսում այդ մասին և ասում է. «Ինչ ջեղծումներ, որ գործուեցան Ռումէլիին և Բուլղարիայի մէջ, նոյնը գործուելու վրայ է երկար ատենէ ի վեր քրդաց ձեռօք Հայաստանի մէջ։ Սակայն յոյներն և բուլղարք Եւրոպայի մէջ տետրակներ հրատարակելով և բողոքոյ ձայներ բարձրացնելով Եւրոպիոյ ուշադրութիւնն իրենց կրած տառապանաց վրայ հրաւիրեցին, մինչդեռ հայերը զուրկ լինելով այդ միջոցէն՝ լռութեամբ տարին և հանդուրժեցին իրենց կրած դառն տառապանաց։ Բայց միթէ արդարութի՞ւն է, որ հայը՝ տէրութեան ամենէն աւելի հնազանդ ազգն՝ այսպէս չարչարուի և կեղեքուի, նոյն իսկ մեր տէրութեան դէմ ապստամբող քրդաց ձեռօք»։ Բոլոր մահմեդական երեսփոխանները միանում են նրանց. և որովհետև քրիստոնեաների վրայ բռնութիւն գործադրուելու հարցն, որի հիման վրայ դեսպանաժողով էր գումարուել և պատերազմ էր հրատարակուել, այս պարագայում բացարձակապէս հաստատվում էր, ուստի խորհրդարանը որոշեց պահանջել Բ. Դռնից, որ անմիջական ազդու միջոցներ ձեռք առնէ այդ բռնութիւնները գործ դնողների դէմ...։

Այս եղաւ Հայկական Խնդրի առաջին հրապարակական արծարծումը Թիւրքական պաշտօնական շրջաններում։

Առ հասարակ օսմանեան երեսփոխաններն սկսել էին իրանց համարձակ յայտարարութիւններով ճնշել կառավարչական շրջաններն, որոնք, մանաւանդ պատերազմի ընթացքում, չափազանց անյարմար էին համարում խորհրդարանի հարցապնդումներն և յարձակումները թէ պատերազմի անաջող ընթացքի և թէ կառավարութեան քաղաքականութեան մասին։ Եւ որպէսզի ժողովուրդն երեսփոխանների այս յարձակողական ճառերը կարդալով չխրախուսուի և նոյնպէս դժգոհութեան ցոյցեր չանէ, Աբդիւլ Համիդի հրամանով կառավարութիւնն արգելեց լրագիրներին՝ խորհրդարանի ատենախօսութիւնները հրատարակել նախ քան պաշտօնական արձանագրութիւնների տպուելն, որտեղ շատ բան փոխվում էր կամ կրճատվում։ Իսկ երբ կառավարութիւնը տեսաւ, որ այնու ամենայնիւ խորհրդարանի մէջ խօսուածները հրապարակ են հանվում, կարգադրեց, որ նիստերը դռնփակ լինեն, որպէսզի կարելի լինի արձանագրութիւնները բոլորովին չհրատարակել։ Վերջապէս յունիսի 19-ին սուլթանի հրամանով նախագահը յայտարարեց, որ Կ. Պոլիսը պատերազմական վիճակի մէջ էր, հետևաբար խորհրդարանի նիստերը պէտք էր դադարեցնել։ Թէև երեսփոխանները բողոքեցին և դիմեցին նոյն իսկ սուլթանին, բայց այնու ամենայնիւ նրանց

իրաւունք տրուեց միայն 2 նիստ ևս գումարել։ Այնուհետև սուլթանի հրաղէով օսմանեան անդրանիկ խորհրդարանն արձակուեց և կարգադրութիւն եղաւ 3 ամիս յետոյ նոր ընտրութիւններ կատարելու։

---

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՕԹԵՐՈՐԴ

*Վանի հրդեհն և քննութեան արդիւնքը.—Մարկոս Աղաբէկեան և Մկրտիչ Աղաթօն.—Գաւառացի հայերի վիճակը պատերազմի ժամանակ.—Ջարդ և բռնութիւններ.—Բողոքներ.—Սուլթան Համիդի և Ներսէս պատրիարքի սիրալիր տեսակցութիւնը.—Շքանշաններ պատրիարքին և առաջնորդներին.—Հայ փախստականները Կովկասում.—Գաղթականութեան հոսանքը.—Ռուսահայոց օգնութիւնը գաղթականներին։*

Ռուս-Թիւրքական պատերազմը բազմաթիւ աղէտներ առաջ բերաւ գաւառաբնակ հայ ժողովրդի գլխին։ Բայց աղէտների շարքն սկսել էր արդէն դեռ պատերազմը չսկսած։ Առաջին զոհը տուաւ Վանի հայութիւնը։ 1876 թ. դեկտեմբերի 1-ին սոսկալի մի հրդեհ հրոյ ճարակ դարձրեց քաղաքի ամբողջ շուկան։ Ոչնչացան հայերի 500-ի չափ խանութներն. իսկապէս ապրանքի միայն մի քառորդն այրուեց, մնացածն ամբողջապէս կողոպտուեց հեծեալ, պահեստի և ոստիկան զինուորների ձեռքով. ուրիշ կողոպտող քիչ կար։ Ոչ միայն զօրքի պաշտպանութեան վրայ յոյս չկար, այլ աւարառուն գլխաւորաբար զօրքն էր։ Իսկ նահանգապետը հիւանդ պառկած էր։ Բայց հայերի կորուստը միայն խանութի ապրանք չէր։ Նրանք սովորութիւն ունէին իրանց բոլոր արժէքաւոր իրերն, ինչպէս ակնեղէն, մուրհակներ և նոյն իսկ փողը խանութների նկուղներում պահել իբրև ապահով տեղ. և ահա այս ամենը կորաւ նոյնպէս։ Հրդեհաձգութեան գլխաւոր նպատակն, ինչպէս օտար հիւպատոսները վկայում են, աւարառութիւնն էր*)։ Ներսէս պատրիարքն անմիջապէս պահանջեց խիստ քննութիւն և յանցաւորների պատժումը։ Նոր նշանակուած սադրազամ Միդհատ փաշան խոստացաւ գոհացում տալ, և իրօք մի քանի աջող կարգադրութիւններ անմիջապէս իրագործուեցին։ Վան, որ մինչև այն ժամանակ Էրզրումի վիլայէթի մասն էր կազմում, 1877 թ. յունվարից դարձաւ

---

*) «Blue Book», Turkey, № 15 (1877), էջ 8.

անկախ վիլայէթի կենտրոն՝ իր մէջ առնելով Բիթլիսը (Բաղէշ), Մուշն և Հէքքեարին։ Վալի նշանակուեց մի վստահելի և անկողմնակալ Թիւրք պաշտօնեայ, Հասան փաշա։ Բացի դրանից՝ նկատելով որ նոր կազմուած նահանգում բնակիչների մեծամասնութիւնը հայ էր, որոշուեց Թիւրք կուսակալին մի հայ օգնական տալ։ Վանի այս առաջին օգնական-վալին եղաւ Մարկոս Աղաբէկեան, որ լուրջ կերպով ձեռնարկեց գործի։ Վան հասաւ թէ չէ՝ նա ամենից առաջ աշխատեց տեղական ոստիկանութիւնը մաքրել վնասակար և անկարգ տարրերից։ Ցեղական հաւասարութեան հիման վրայ, բոլոր անարժան մահմեդական ոստիկաններին հեռացնելով նրանց փոխարէն վստահելի մարդիկ նշանակեց հայերից, որոնց և յանձնեց քաղաքի կարգապահութիւնը։ Եւ որ անսպասելի էր մահմեդականների համար, թէ ոստիկան և թէ գիշերապահ հայերին պատուիրեց իսկոյն զէնքի դիմել, եթէ կարգապահութիւնը խանգարող և ընդդիմացող լինի նոյն իսկ Թիւրքերից։ Այս կարգերը շատ ծանր թուեցան Թիւրքերին, մանաւանդ նրանց երևելիներին, որոնք անսովոր էին հայի մօտ զէնք և իշխանութիւն տեսնելու։ Նրրանք բողոքեցին վալիին, որ իրանց պատասխանեց, թէ կատարուած բարենորոգումները բարձրագոյն իշխանութեան հրամանով էին եղած, և Թիւրքերը պարտաւոր էին յարգել կառավարութեան կարգադրութիւնները։

Վանի հրդեհի և աւերման պատճառները քննելու և յանցաւորներին պատժելու նպատակով կառավարութիւնը մի խառն յանձնաժողով ուղարկեց Վան։ Կատարուած քննութիւնները չկարողացան երևան հանել իսկական յանցաւորներին և աւարառուներին։ Վանի Թիւրքերը, մանաւանդ մեծամեծներն և իշխանաւորները, զօրքի և Թիւրքերի գրգռման իբրև պատճառ ցոյց էին տալիս հայերի մէջ երևցած «կասկածելի տարրերն» աշխատելով դրանով արդարացնել իրանց վրիժառութիւնը. վնասների մասին էլ նրանք պնդում էին, թէ Թիւրքերն էլ այնչափ էին վնասուել, որչափ հայերը, քանի որ այրուած շէնքերի կէսը Թիւրքերի սեպհականութիւնն էր. իսկ հրդեհը վերագրում էին պարզ պատահարի և զօրքի վարմունքը բոլորովին արդարացնում։ Արդարութիւնը պահանջում է խոստովանել, որ հայ «կասկածելի տարրերի» մասին պատմուածը բոլորովին անհիմն չէր և այն էլ նրանց համար ոչ նպաստաւոր կերպով*)։ Բայց

---

*) Մի հայ թերթ այն միջոցին գրում էր. «Եթէ Վանայ մէջ մի քանի անխոհեմ տաք գլուխների ցոյցերը չլինէին, գուցէ Վանայ խանութները

մի քանի հոգու կամ «կասկածելիների» պատճառով հազարաւոր անմեղներ կործանելը վայրենի վրիժառութեան այն ծանօթ զգացմունքն է, որ թէ այն ժամանակ և թէ այնուհետև այնքան սարսափ և արհաւիրք է տարածած Թիւրքիայի մերթ այս և մերթ այն մասում։

Քննիչ յանձնաժողովն իր քննութեան արդիւնքի մասին համերաշխ եզրակացութեան չկարողացաւ գալ։ Քննիչներից մէկը՝ Մկրտիչ Աղաթօն՝ «այնպիսի տեղեկագիր շինեց, որով Թիւրք հասարակութիւնն և զօրքերը կարդարացնէր....։ Քննիչ յանձնաժողովի միայն Թիւրք անդամները ստորագրեցին այդ տեղեկագիրն, իսկ հայ անդամները չստորագրեցին։ Մարկոս Աղաբէկեան որչափ կրնար դէմ կեցաւ այդ տեղեկագրին, յայտնելով թէ բոլորովին անիրաւ և կողմնակալութեամբ գրուած է։ Բ. Դուռն ընդունեց Աղաթօնեանի այդ ստայօդ տեղեկագիրը։ Աղաբէկեան պաշտօնէ ձգուեցաւ, Աղաթօնեան վարձատրուեցաւ նորա տեղը անցնելով»*)։

Վանեցիների այս մեծ դժբախտութիւնը բնականաբար անտարբեր չէր կարող թողնել իրանց մեծ հայրենակցին, Խրիմեանին, որ ուժեղ բողոքի ձայն արձակեց այս հրդեհի առթիւ և այդ պատճառով էլ զրկուեց իր թոշակաբեր պաշտօնից**)։

Վանի հայոց վրայ կատարուած այս բռնութիւնն և նորա անպատիժ մնալը՝ քաջալերող օրինակ դարձաւ քիւրդերին, որոնք այնուհետև նորանոր սխրագործութիւնների դիմեցին։ «Ինչպէս երևում է,—գրում էր Էրզրումի անգլ. հիւպատոսը,—Բիթլիս, Մուշ և Մուտկան գաւառների քիւրդերն որոշել են օգուտ քաղել

---

մինչև ցայժմ կանգուն և նոցա տէրերը թշուառութիւնից ազատ լինէին. այդ մեզ նոյնպէս ականատես վանեցիք պատմել են։ Այդպիսի ցոյցերն ամենալուսաւորեալ տէրութիւնք էլ անպատիժ չեն թողնում, և այն՝ իրաւամբ. ուր մնաց բարբարոս մահմեդական տէրութիւնն, որ և բարբարոսաբար պատժեց, կամենալով թուլացնել այն ժողովուրդն, որի մէջ փոքր ինչ ոյժ էր նկատում և երկիւղ էր կրում, որ այդ ոյժն իւր դէմ կը կանգնի. և նա բարբարոսաբար ճնշեց այդ ոյժը»։ («Մեղու Հայաստանի», 1878, № 5).

*) «Մշակ», 1877 թ. յունիսի 27. Մ. Փորթուգալեանի յօդուածը։

**) Վանի հրդեհի առթիւ նախկին պատրիարք Մկրտիչ արքեպ. Խրիմեան Հայրիկ՝ «կուժ մի ջուր իւր այրած հայրենեաց վրայ» սրսկելու համար գրեց «Վանգոյժ» տետրակն, որ նախ հրատարակուեց Կ. Պօլսում, 1877-ի սկիզբները. բայց կառավարութիւնն արգելեց նորա վաճառումն։ Այն ժամանակ, նոյն տարին, ապրիլին, երկրորդ անգամ լոյս ընծայուեց Թիֆլիսում։

Խրիմեան՝ օսմանեան սահմանադրութեան հրատարակումից յետոյ նշանակուել էր ծերակոյտի անդամ, որի համար լաւ թոշակ էր ստանում. բայց այս տետրակի պատճառով հեռացուեց այդ պաշտօնից։

երկրի անկարգ վիճակից և կառավարութեան թուլութիւնից՝ ընդարձակ ծաւալով արշաւանքներ կատարելու. և չնայելով որ դեռ ձիւնը ծածկած է գետինը, նրանք իրանց գործողութիւններն արդէն սկսել են Բիթլիսի գաւառում»․ և նա մի առ մի թւում է այն հայ գիւղերն, որոնց վրայ յարձակուել, թալանել և կոտորել են քիւրդերը*)։

Իսկ ի՞նչ էին անում տեղական իշխանութիւնները։ Նահանգապետները ձեռքները լուանում էին յայտնելով իրանց անկարողութիւնը քիւրդերի դէմ։ Վանի վալին, օրինակի համար, ասում էր, թէ եթէ նա զօրք կանգնեցնէ այն բոլոր քաղաքներում և գիւղերում, որոնց սպառնում են քիւրդերն, այն ժամանակ ռուսական սահմանագլուխն և բերդերը պաշտպանելու համար զօրք չէր մնայ...**)։ Բայց այս զօրքը, կանոնաւոր բանակն իր պաշտօնակալներով՝ մի՞թէ օրինակելի կարգապահ էին։ Կանոնաւոր զօրքի պաշտօնակալները,—պատմում է նոյն դիւանագիտական աղբիւրը,—«մտնում են խանութներն և ապրանքն առնում են իրանց ուզած գնով․ խանութպանների ամենափոքր նկատողութեանը նրանք պատասխանում են ծեծով և քրիստոնէական կրօնը հայհոյելով։ Եւ այս բաները նրանք անում են հասարակ զինուորների առաջ, որոնք և հետևում են իրանց մեծերի օրինակին։ Այս՝ քաղաքներում։ Իսկ գիւղերում թէ պաշտօնակալ և թէ զինուոր՝ քրիստոնեաների հետ վարվում են ինչպէս իրանց քէյֆն է ուզում...»***)։

Անգլիական հիւպատոսները կանոնաւորապէս տեղեկագրում էին իրանց շրջանում կատարուած անկարգութիւններն, որովհետև լորդ Բիկընսֆիլդի Թիւրքասէր կառավարութիւնն՝ իրերի այդ վիճակից դժգոհ՝ խիստ շրջաբերական հրահանգ էր տուել իր բոլոր գործակալներին, որ խստիւ հետևեն և բանութեան ամեն մի դէպք անձամբ ստուգեն և հաղորդեն Լօնդօն, որովհետև, ասուած է այդ հրահանգում, անգլիացիների հայեացքն այժմ շատ լուրջ կերպով ուղղուած է Թիւրքիայի վրայ։

Այս ամենը կատարվում էր արդէն դեռ պատերազմը չը յայտարարուած. իսկ երբ պատերազմական գործողութիւններն

---

*) Երբ Կ. Պօլսի «Մանզումէի Էֆքեար» լրագիրը տպեց մի քանի թղթակցութիւն Վանից, որոնց մէջ նկարագրուած էին քիւրդերի այս շահատակութիւնները, կառավարութիւնն անմիջապէս խափանեց լրագիրն, իսկ խմբագրին (Կարապետ Փանոսեան) էլ բանտարկեց, իբրև «մտքեր գրգռող՝ սուտ լրեր հրատարակելով...»։

**) «Blue Book», Turkey, № 15 (1877), էջ 146, 255.

***) Անդ. էջ 306.

սկսեցին, գաւառական հայերի վիճակը՝ մանաւանդ սահմանագլխի մօտ՝ անտանելի դարձաւ։ Այս վերջինները պատերազմի ընթացքում չէին կարող անտարբեր հանդիսատես մնալ զինուորական շարժումներին. հանգամանքներն այնպէս էին բարդուել, որ սահմանակից գաւառներում բնակուողներն ստիպուած էին նոյն իսկ գործնական մասնակցութիւն ունենալ։ Եւրոպական Թիւրքիայում հայ քիչ կար, բայց այնուամենայնիւ այնտեղ էլ, յատկապէս Ռուշչուկում, նրանցից ոմանք զէնք էին առել և իբրև կամաւոր զինուոր օգնում էին Թիւրք բանակին, որի համար սուլթան Համիդի անունից առանձին շնորհակալութեան թուղթ էր ստացել պատրիարքը։ Աւելի մեծ մասնակցութիւն ունէին հայերը Փոքր Ասիայի սահմանագլխի վրայ։ Կարնից և շրջակայքից մի քանի հազար հայ կամաւոր էին գրուել և ինչպէս պատերազմի դաշտ չէին գնում, բայց բանակի ներքին պէտքերին օգնում էին։

Երբ պատերազմի առաջին շրջանում Լօրիս-Մէլիքօվի և Տէր-Ղուկասօվի բանակները հարկադրուած էին ետ քաշուել, Բայազիդի և Ալաշկերտի կողմերի հայ գիւղացիներն, որոնք իրանց ուրախութիւնն էին յայտնել քրիստոնեայ զօրքին և նրան որոշ համակրութիւն ցոյց տուել իրանց յարաբերութիւնների մէջ, այժմ ռուսաց նահանջելով՝ անպաշտպան էին զգում իրանց և իրաւացի կերպով վախենում էին Թիւրքերի և քիւրդերի վրէժխնդրութիւնից։ Ուստի նրանք ամեն ինչ թողած՝ կցուեցին Տէր-Ղուկասօվի բանակին և նրա հետ միասին անցան ռուսական սահմանը։ Հայազգի զօրավարը մեծ շրջահայեցողութեամբ շարժելով թէ ինքն անվնաս ետ նահանջեց և թէ հազարաւոր փախստական հայեր ապահով կերպով բերաւ իր հետ։ Բայց սոսկալի եղաւ այն հայերի դրութիւնն, որոնք մնացին իրանց տեղում։ Վանի վալի Ֆայըկ փաշան, տեսնելով որ Տէր-Ղուկասօվ Բայազիդում հազիւ 1600 հոգուց բաղկացած մի փոքր զօրագունդ էր թողել, որոշեց պաշարել և նորից գրաւել քաղաքը։ Եւ որովհետև ոչ իր ձեռքի տակ եղած կանոնաւոր զօրքն և ոչ իր հաւաքած բաշի-բօզուքները բաւական չէին իր մտադրած նպատակի համար, ուստի նա դիմեց հայդերանցի քիւրդերի ցեղապետ շէյխ Ջէլալէդդինին, որի հրամանով 15,000-ից աւելի վայրագ քիւրդեր նետուեցին պատերազմի դաշտը։ Քիւրդ շէյխի և իր վոհմակի գլխաւոր գործն աւազակութիւնն և աւարառութիւնն եղաւ։ Նրանք դեռ փաշայի բանակը չհասած յարձակուեցին իրանց ճանապարհին հայ գիւղերի վրայ, 24 գիւղ հիմնայատակ կործանեցին, բնակիչներին ջարդեցին և նրանց

բոլոր ինչքը Թալանեցին։ Ժողովրդի մի մասն ապաւինել էր ս. Բարթուղիմէոսի վանքն. անխնայ կոտորեցին այնտեղ բոլորին, գերելով կանանցից շատերին։

Այն ժամանակ, երբ կենտրոնական կառավարութիւնը աշխատում էր գրաւել հայ ազգի համակրութիւնն և համերաշխ գործակցութիւնը, գաւառացի հայերի վրայ գործ դրուած այս սարսափելի բռնութիւնները շատ մեծ յուզում առաջ բերին Կ. Պօլսում թէ պետական և թէ հայկական շրջաններում։ Բացի այն ազգու բողոքից, որ օսմանեան խորհրդարանի հայ անդամները բարձրացրին, ինչպէս տեսանք նախորդ գլխում, ազգային երեսփոխաններն էլ Ազգային Ժողովում մեծ աղմուկ հանեցին և բացատրութիւն պահանջեցին Ներսէս պատրիարքից, որ յայտնեց, թէ ինքն արդէն հարկ եղած դիմումն արել էր Բ. Դրան, որ շատ ցաւում էր այս անցքերի համար «և հաստատապէս որոշած էր ժողովրդեան անդորրութեան ու ապահովութեան համար ամեն ազդու միջոց ի գործ դնել. սակայն ինչ օգուտ, որ սանիկ պատերազմի ատեն անկարելի է հաստատուն բարեկարգութիւններ ի գործ դնել» *)։ Ներսէս այս առթիւ դիմել էր նոյն իսկ շէյխ-իւլ-իսլամին, որ նա յորդոր կարդայ քիւրդ շէյխերին և զսպէ նրանց կրօնական մոլեռանդութիւնը։

Այս ջարդի և աւերմունքի թէ հայ ժողովրդի և թէ օտարների վրայ թողած ցնցող տպաւորութիւնը գէթ մասամբ փարատելու համար Աբդիւլ Համիդ որոշեց մի առանձին համակրական ցոյց անել Ներսէսին և՝ յանձին նրա՝ ընդհանուր հայ ազգին։ Այս նպատակով նա իր մօտ հրաւիրեց պատրիարքին և նրան մի բարձր շքանշան շնորհեց։ Աբդիւլ Համիդի և Վարժապետեանի այս տեսակցութիւնը բաւական բնորոշ կերպով ցոյց է տալիս սուլթանի պալատում այն ժամանակ տիրող քաղաքականութիւնն, ուստի աւելորդ չենք համարում այստեղ ամբողջապէս առաջ բերել, ինչպէս որ նա պաշտօնապէս հաղորդուած է Ազգային Ժողովին **)։

«Օգոստոս 10/22-ին Ս. Պատրիարքն հայոց Տ. Ներսէս արքեպիսկոպոս յատուկ հրաւիրանօք ներկայացաւ Վեհ. Սուլթան Աբդիւլ Համիդ Կայսեր, ժամը 8-ին, ի կայսերական քէօշքն Եըլդըզի։ Երբ պալատ հասաւ, արքունի թէշրիֆաթջին (արարողապետ) ընդ առաջ ելնելով առանձին սենեակ մը հրամցուց,

---

*) Ատենագրութիւնք Ազգ. Ժողովոյ.

**) Ատեն. Ազգ. Ժող. 12 օգոստ. 1877.

յորմէ քառորդ մը զկնի Նորին Վեհափառութեան (սուլթանի) ատեանն ելաւ։ Պատրիարքը մինչդեռ կը խոնարհէր առաջի գահոյից Կայսեր, Կայսրը, որ ոտքի վրայ էր, Պատրիարքի ձեռքէն բռնելով չթողուց, որ խոնարհի, և հրամայեց, որ պատրաստուած աթոռին վրայ նստի, իւր գահոյքին դէմը խիստ մօտ։ Պատրիարքը ըսաւ. «Վեհափառ Տէր, Ձեզ նման ինքնակալի մը առջև կանգնիլն ևս պատիւ է մեզ»։ «Խնդրեմ նստեցէք»—հրամայեց Կայսրը, և Պատրիարքը նստաւ խոնարհելով»։

Դրանից յետոյ տեղի է ունենում հետևեալ խօսակցութիւնը սուլթանի և հայոց պատրիարքի միջև։

«Կայսրը.—Ինչպէ՞ս էք, աղէ՞կ էք, հանգի՞ստ էք. շատոնց ի վեր կը փափաքէի ձեզի հետ տեսութիւն ընել, բայց պատշաճ ատենի մը կը սպասէի։ Ես զձեզ կը սիրեմ, այստեղը ձերն է, երբ որ կամենաք, կարող էք գալ ինծի։

«Պատրիարքը.—Վեհ. Տէր, մենք ինքզինքնիս մոռցած ենք բոլորովին, և միայն զՁեր Վեհափառութիւնը և կայսերական բանակը կը մտածեմք, գիշեր ցորեկ աղօթելով։ Հայոց ազգը կայսերական բանակին ամեն կերպ օգնութիւն չէ զլացած. թէ անձամբ եւ թէ իրենց կառքերովն, զրաստիւքը 40 հազար հոգւոյ չափ կը ծառայեն*)։

«Կայսրը.—Այո, գիտեմ, բայց շատ կը ցաւիմ ներկայ ժամանակին վրայ։ Ես, որ մրջիւնի մը վրայ կոխել կը խղճամ, այսչափ արիւնհեղութիւններ տեսնելուս յոյժ կը ցաւիմ, բայց սակայն գիտէ Աստուած, որ այս պատերազմին համար ես պատասխանատու չեմ։

«Պատրիարքը.—Թագաւորաց մեծագոյնն էք Դուք, և Ձեր նախորդները գերազանցած էք. նոքա իրենց ժամանակին գիտութիւններովը փառաւոր եղան, իսկ Դուք տագնապի մէջ, նեղութեան մէջ օսմանեան դրօշը փառաւորեցիք։ Դուք, Վեհ. Տէր, Ձեր կայսերական գահն ելնելէն ի վեր օր մը հանգիստ չունեցաք և ասոր համար աւելի մեծ էք, և մենք, ազգովին, կաղօթեմք, որ Ձեր զէնքերը միշտ փառաւոր ըլլան և անցնին այս աղէտալի օրերը, որպէսզի կարող լինիք Ձեր գահակալութեան օրը փառաւոր խաթթով խոստացած բարեկարգութիւններըն ի գործ դնել, վաճառականական և երկրագործական դպրոցներ հաստատելով և արուեստներու բարգաւաճում տալով։

«Կայսրը.—Իմ հայոց ազգէս յանչափս գոհ եմ և շատ շնորհակալ եմ իրենց ամենեն. կը խնդրեմ, որ հաղորդես ազգին՝ Իմ

*) Ընդգծումները մերն են։

*շնորհակալութիւններս ու սէրս. գոհ եմ նաև Իմ Բ. Դուռը գտնուած հայ պաշտօնատարներէն, որք ամենայն անձնուիրութեամբ կաշխատին հաւատարմաբար։ Գիտեմ, որ հայ ազգս այս պատերազմին պատճառաւ շատ նեղութիւն կրեց. բայց պէտք է հաստատ գիտնան, որ այս ամեն տառապանաց փոխարէն շատ աղէկ օրեր պիտի տեսնեն և իրենց հաւատարմութեան պտուղը պիտի վայելեն և բաղդաւոր պիտի ըլլան։ Բոլոր հպատակներս կը սիրեմ,* մանաւանդ հայոց ազգը՝ *որ իր դարաւոր հաւատարմութեան արգասիքը այս անձուկ ժամանակին մէջ ալ ցոյց տուաւ։ Իմ աչքիս իսլամ և քրիստոնեայ խտրութիւն չունին. ամենքն ալ օսմանցի են. կրօնքն Աստուծոյ կը վերաբերի։ Ես իրենց կօնստիտիւսիօն* (constitution, *սահմանադրութիւն) տուի, որ ամենքն ալ միևնոյն կերպով յառաջադիմեն հաւասար եղբայրութեամբ»։*

*Պատրիարքը այստեղ մի երկար բարեմաղթութիւն է անում սուլթանի կեանքի, Թիւրք բանակի աջողութեան և իր բարի բաղձանքի կատարման համար, յայտնելով որ հայ ազգը անբաժանելի է օսմանեան տէրութիւնից, Նրա արդարութեան աթոռին ապաւինած, միշտ Նրա հաստատութիւնն և յարատևութիւնն է ցանկանում։*

*«Կայսրը այս միջոցին ձեռնամած և խիստ ազնիւ վարմունքով ջերմեռանդութեամբ մտիկ կընէր, քանիցս «շնորհակալ եմ» ըսելով։*

*«Պատրիարքը պատրաստ էր մեկնելու, բայց Կայսրը հրամայեց նստիլ, ըսելով. «Ձեր աղօթքն և խնդրուածքը Բարձրեալն Աստուած ընդունի, որ իմ բոլոր դիտաւորութիւններս ի գործ դրուին։ Սակայն,—ըսաւ Կայսրը,—շատ կը ցաւիմ բուլղարաց ազգին վրայ, որ հաւատարմութեան դէմ մեղանչեց։*

«Պատրիարքը.—*Իրաւունք ունի Ձեր Վեհափառութիւնը ցաւելու, բայց չեմ կարծեր, որ բովանդակ բուլղար ազգը Ձեր անհուն երախտեաց և հացին ապերախտ գտնուած ըլլայ. այլ փոքր մաս մը միայն՝ որ խաբուած են. ուստի Ձեր Վեհափառութիւնը անտարակոյս կը գթայ անոնց վրայ, որք մեղանչած չեն իրենց հպատակութեան մէջ։*

«Կայսրը.—*Շատ կը ցաւիմ, շատ կը ցաւիմ, բայց ի՞նչ ըսեմ։ Ես պատասխանատու չեմ այս արիւնհեղութեանց»։*

*Նոյն միջոցին սուլթանի մի ակնարկով բերում են ներս արծաթէ ափսէի վրայ՝ Օսմանիէ շքանշանի Ա. աստիճանն և կօրդօնը և կախում են պատրիարքի վզից։*

*«Պատրիարքը կրկին բարեմաղթութիւն ըրաւ և շնորհա-*

կալութիւն յայտնեց, ըսելով որ «բոլոր հայ ազգը շնորհազարդ ըրիք կրկին, վասնզի Ձեր Վեհափառութեան առ այն ունեցած սիրոյն գրաւականն է»։

«Կայսրը.—Այս նշանը՝ յանուն և ի դէմս Իմ հայոց ազգիս կը շնորհեմ ձեզ, յորոց յոյժ շնորհակալ եմ։

«Պատրիարքը՝ «Երանի թէ այսպիսի բարի և հազուագիւտ և հրեշտականման թագաւորի մը արժանաւոր հպատակն ըլլայինք» ըսելով խոնարհեցաւ և մեկնեցաւ կայսերական պալատէն»։

Երբ այս ջերմ ընդունելութեան նկարագրութիւնը Ազգային Ժողովում կարդացուեց, երեսփոխանները շնորհաւորեցին պատրիարքին և որոշեցին շնորհակալութեան ուղերձ ներկայացնել սուլթանին նրա հայասիրական զգացմունքի համար։

Համիդի այս համակրական ցոյցն այն արդիւնքն ևս ունեցաւ, որ Ներսէս մի առ ժամանակ դադարեց հրաժարականի մասին մտածելուց։ Դեռ ևս մի քանի ամիս առաջ գաւառական վերջին հարստահարութիւնների պատճառով նա դարձեալ իր հրաժարականն էր ուղարկել Նոր սադրազամ Էդհէմ փաշային։ Բայց սա չէր ընդունել և, որպէսզի նրան հանդարտեցնէ, հրամայել էր, որ Բ. Դռան մէջ վերստին գումարուի այն յանձնաժողովը, որի պաշտօնն էր գաւառական հարստահարութիւնների և մասնաւորապէս հողային խնդրի քննութիւնը. Թէև այս գումարումն էլ այնքան աննպատակ էր՝ որքան առաջին գումարումները։ Միակ իրական հետևութիւնն, որ Ներսէսի այս հրաժարականն ունեցաւ, այն էր, որ, սադրազամի հրամանով, մի քանի գաւառական թիւրք պաշտօնեաներ, որոնց զեղծումների դէմ խիստ գանգատներ կային, անմիջապէս պաշտօնից արձակուեցին։

Սուլթան Համիդից վերջը Կ. Պոլսի կիսապաշտօնական մամուլն ևս սկսեց գովասանք կարդալ հայոց։ Առանձնապէս գովում էին Էրզրումի հայերին։ Էրզրումի կուսակալը հեռագրել էր, թէ հայոց առաջնորդը նրան այցելելով հանդիսաւոր կերպով հաւաստիացրել էր ռուսական պատերազմի առթիւ, թէ ինքն և իր ժողովուրդը խորին հաւատարմութեամբ համակուած են կառավարութեան նկատմամբ։ Սադրազամն այս պատճառով սրտագին շնորհակալութիւն յայտնեց Ներսէս պատրիարքին և տեղեկացրեց նրան, թէ «Օսմանիէ» շքանշաններ պիտի ուղարկէ Էրզրումի, Վանի, Մուշի և Կարսի հայ եպիսկոպոսներին....։ Եւ երբ Կ. Պոլսում սուլթան Համիդ և իր Բ. Դուռը փաղաքշական խօսքերով և շքանշաններով աշխատում էին շլացնել հայոց աչքը՝ մոռացնելու համար տասնեակ հայ գիւղերի կոր-

ծանումը, հարիւրաւոր հայերի ջարդն և հազարաւորների աւերումը, սահմանի միւս կողմը, Կովկասում, բոլորովին տարբեր ոգևորութիւն էր տիրում միևնոյն խնդրի առթիւ։

1877-ի սկզբից արդէն հայ գաղթականներ սկսել էին փախուստ տալ Կովկաս, պատերազմի երկիւղից և Թիւրքաց անկանոն զօրքերի բռնութիւններից։ Այս Թուականից սկսած՝ «Երևանի, Ալէքսանդրօպօլի և շրջակայ գիւղերի ճանապարհների վրայ կարելի էր տեսնել բազմաթիւ Թիւրքահայեր, պատառած հագուստներով և այլանդակուած մարմնով, որոնք փախել էին Հայաստանից, քիւրդերի գազանութիւններից»*)։ Այս միջոցին Բայազիդի շրջանից մի մեծ խումբ էլ փախաւ դէպի Պարսկաստան, Սալմաստ, բայց նրա մեծ մասը վերադարձաւ այնուհետև իր ծննդավայրը։

Երբ Տէր-Ղուկասօվի բանակի հետ հազարաւոր Թշուառ հայ փախստականների Կովկաս մտնելու լուրը հասաւ Թիֆլիս, անմիջապէս տեղական հայ հասարակութիւնը միջոցներ ձեռք առաւ նրանց օգնութեան հասնելու։ Արդէն յունիս ամսին (1877 Թ.) եռանդուն կերպով վերստին հանգանակութեան ձեռք զարկին ի նպաստ Թիւրքահայոց *)։ Թիֆլիսում այդ նպատակի համար էլ յատուկ մասնաժողով ընտրուեց, որ իր հանգանակած նուէրները—Թէ փողով և Թէ իրեղէններով—հասցնում էր գաղթականներին իր անդամների կամ տեղական օժանդակ մասնաճիւղերի միջոցով։ Բացի այս մասնաժողովից մեծ օգնութիւն հասցրին նրանց նաև Երևանի նահանգի գիւղացի հայերն, որոնք հիւրասիրեցին նրանց իրանց բնակարաններում և մի քանի ամիս անվարձ կերակրեցին բոլորին։

Զգալի նիւԹական օժանդակութիւն մատոյց այս գաղթականներին նաև ռուսական կառավարութիւնը։ Երբ Տէր-Ղուկասօվի բանակի հետ եկած գաղթականները մտան Երևանեան նահանգը, Կովկասի գլխաւոր վարչութիւնը պետական պաշտօնեայ Յովհ. Խատիսեանին, որ միևնոյն ժամանակ Թիֆլիսի հայոց մասնաժողովի անդամ էր, ուղարկեց նրանց մօտ, որ տեղեկութիւններ ժողովէ նրանց վիճակի մասին և միանգամայն իր դիտողութիւնները ներկայացնէ, Թէ ինչպէս և

*) «Մշակ», 1877 յուլիսի 11.

**) Մի քիչ առաջ արդէն Վանի հրկիզեալների համար նպաստ էր հանգանակուել ոչ միայն Կովկասում, այլ Ռուսաստանի զանազան կողմերում բնակւող հայերի մէջ, որոնք իրանց այս նպաստներն ուղղում էին կամ ռուսահայ լրագիրներին և կամ ուղղակի Կ. Պօլսի ազգ. պատրիարքարանին։

ում կարելի է տեղաւորել այն գաղթականներին Ռուսաստանի սահմաններում, ի հարկէ եթէ նրանք պատերազմը վերջանալուց յետոյ ուզեն մնալ Ռուսաստանում։ Խատիսեանի զեկուցման համաձայն՝ Տէր-Ղուկասովի բանակին հետեւել են ընդամենը 3000 ընտանիք, որոնց մէջ էին 500 տուն եզիդիներ։ Այս 2000 ընտանիքից մի մասն անցել էր Պարսկաստան, 250 գերդաստան ետ էր դարձել Թիւրքիա, որով ռուսական սահմանն անցել էին իսկապէս միայն 900 հայ ընտանիք (թէև ի սկզբան տարածուել էր, թէ նրանց թիւը 3000-ի է հասնում)։ Խատիսեան իր պաշտօնական զեկուցման մէջ՝ այս գաղթականների մասին ասում էր, թէ «մեր (ռուսական) կառավարութիւնը ցանկանում է հովանաւորել նրանց՝ իբրև վարձատրութիւն այն համակրութեան համար, որ նրանք ցոյց տուին մեր զէնքի աջողութեան՝ Երևանեան բանակի (Տէր-Ղուկասովի հրամանատարութեամբ) արշաւած ժամանակ»*)։

Պատերազմի դադարումից վերջը, երբ յայտնի եղաւ, թէ ռուսաց զօրքը պիտի ետ քաշուի իր գրաւած տեղերի մեծ մասից, նորից զարթեց ժողովրդի մէջ Կովկաս գաղթելու ձգտումն, որ անշուշտ մեծ չափեր կառնէր, եթէ յորդորներ և արգելիչ միջոցներ չլինէին։ Այս գաղթականութեան կամ աւելի ճիշտը՝ փախուստի մտադրութեան պատճառներն էին նախ՝ թիւրքաց անկանոն զօրքի և քիւրդերի բռնութիւններն, որոնցից ազատուելու համար փախչելը միակ միջոց էր համարվում, երկրորդ՝ այն, որ երբ ռուսական զօրքերը թիւրքական գաւառներում առաջացան, հայերից ոմանք քրիստոնեայ ազատարար զօրքի ներկայութիւնից քաջալերուած՝ թէ՛ քաղաքներում և թէ գիւղերում փոխադարձաբար բռնութիւններ էին կատարել տեղացի մահմեդականների վրայ. և երբ յայտնի եղաւ, թէ ռուսները պիտի թողնէին իրանց գրաւած այդ տեղերը, հայերը սկսեցին իրանց անապահով զգալ, վախենալով թիւրքերի վրէժխնդրութիւնից։ Էրզրումի անգլ. հիւպատոսը վկայում է, որ եթէ թիւրք հրամանատար Մուսա փաշայի խիստ կարգադրութիւնները չլինէին, իրօք այդպիսի մի վրիժառութիւն սպասելի էր։ Պատահել են դէպքեր, երբ նոյն իսկ քիւրդ ցեղապետներ, այս կամ այն դիտումներով, իրանց հովանաւորութեան տակ են առել իրանց շրջանի հայ գիւղացիներին և թէ պատերազմի ընթացքում և թէ յետոյ պաշտպանել են նրանց, չթողնելով որ

---

*) «Մշակ», 1877, № 89.

գաղթեն*)։ Չնայելով այս պաշտպանողական միջոցներին, վրիժառութեան կամ աւելի ճիշտը՝ ջարդի և բռնութեան դէպքեր այնուամենայնիւ տեղի ունեցան, ինչպէս օր. Խոտրջուրում։ Ռուսական իշխանաւորները՝ մանաւանդ հայազգիները՝ ընդհանրապէս ոչ միայն չէին քաջալերում, այլ ընդհակառակն ամեն կերպ աշխատում էին կանգնեցնել գաղթականութեան շարժումը։ Զօրապետ Յովհ. Լազարէվ, երբ դեռ Կարսի հրամանատարն էր, յատուկ գրաւոր յայտարարութեամբ յայտարարում էր, որ հայ ժողովուրդը չշարժուի իր հայրենի հողից. Նա ապահովեցնում էր, թէ Թիւրք կառավարութիւնն ամեն կերպ խոստում էր տալիս որևէ նեղութիւն չտալ նրանց։ Լազարեվ նոյն իսկ աշխատում էր, որ պատերազմի ընթացքում գաղթողներն էլ պատերազմից յետոյ վերադառնան և տիրանան իրանց լքած տուն ու տեղին։ Այս ուղղութեամբ գործում էին նաև Կարինի ժամանակաւոր ոստիկանապետ նշանակուած Կոստանդին Կամսարականն և նրա օգնական Գրիգոր Նիկողոսեանը։ Բացի այս բարոյական յորդորներից Կարսի և Կարինի ռուսական զինուորական իշխանութիւններն ևս նոյն մտքով ազդարարութիւններ արին և երբեմն նոյն իսկ բռնի միջոցների դիմեցին գաղթականութեան հոսանքը կասեցնելու համար, որով միայն հնար եղաւ գաղթողների թիւը շատ սահմանափակել։

Այն գաղթականներն, որոնք արդէն փոքր ի շատէ տեղաւորուեցին Կովկասում, այլ ևս չուզեցին վերադառնալ Թիւրքիա։ Նրանք բնակութիւն հաստատեցին, սահմանագլխի մօտերը, Երևանեան նահանգում, թէև այն միջոցին Կ. Պօլսի հայ և թիւրք մամուլը լուր էր տարածել, թէ ռուս կառավարութիւնը նրանց համար բնակավայր է որոշել հոծ հայ ժողովուրդ ունեցող տեղերից հեռու, Աբխազիայում (դարձեալ Կովկասում), որ սխալ էր։

ՍԱՐՈՒԽԱՆ

(Կը շարունակուի)

---

*) Առանձնապէս յիշվում է քիւրդ ցեղապետ Ջամշուդ աղան, Ալաշկերտի գաւառում։

# ՄԱՐԴԸ, ՆՐԱ ԾԱԳՈՒՄԸ ԵՒ ՍԿԶԲՆԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԻՔԸ

## I

*Մեր երկիրը և տիեզերքը.—Մարդը և կենդանական աշխարհը.—Երկու տեսակէտ մարդու և կենդանական աշխարհի ծագման մասին.—Դարվինի դերը.—Մարդու և կենդանիների ազգակցութեան քանի մի ապացոյցներ.—Ֆակտեր համեմատական անատոմիայից և սաղմնաբանութիւնից.—Հիւանդութիւնները մարդու և կենդանիների մէջ.—Ժառանգած յատկութիւնները, նրանց մնացորդները.—Կոյր և հաստ աղիքները։*

---

*Վաղուց է անցել այն ժամանակը, երբ կարծում էին, թէ մեր Երկիրը իր ազնիւ ու բարձր բնակիչ-մարդով բռնում է առաջնակարգ տեղը ամբողջ տիեզերքում։ Մարդիկ հաւատացած էին, որ մեր Երկիրը միակն է իր մեծութեամբ և փառքով. նա է տիեզերքի կենտրոնը։*

*Իսկ մարդը՝ Երկրի բնակիչ-թագաւորը՝ Արարչի միակ ամենաբարձր, բոլորովին անկախ ստեղծագործուած շնչաւոր էակն է։*

*Ինչպէս մեր Երկրին բացառիկ նշանակութիւն էին տալիս ամբողջ տիեզերքում, նոյն չափով բացառիկ տեղ էին տալիս և մարդուն՝ բնութեան մէջ։ Ամեն ինչ կենտրոնացած էր նրա շուրջը։ Ինչ վերաբերում է Երկրում բնակուող ուրիշ շնչաւոր էակներին, մարդը դրանց հետ ոչ մի կապակցութիւն չունէր։ Մարդը բոլորովին անկախ էակ է։ Նրան շրջապատող բնութիւնը, բոլոր կենդանի էակները ստեղծուած են միմիայն նրա համար։ Ամեն ինչ մարդու համար, ամեն ինչ յօգուտ Երկրի թագաւորի։*

*Մարդու բացառիկ բնոյթը շեշտելու համար, բոլոր շնչաւոր էակներին տուել էին յատուկ կոչում, այն է՝* անբան կենդանի, անասուն. *իսկ երկոտանի էակը իր բարձր հոգեկան դրութեամբ կրում է մի ուրիշ անուն՝* մարդ։

*Մարդու և անասունների միջև ահագին անանցանելի ան-*

դունդ կայ։ Ամենակարող Արարիչը սկզբում ստեղծեց այդ անասուններին, և, ի հարկէ, իւրաքանչիւր կենդանական տեսակը ստեղծուեց միւս ձևերից անկախ, բոլորովին յատուկ պլանով։

Արարչագործութիւնը, վերջապէս, պսակվում է մարդու ստեղծագործութեամբ։ Առանձին և յատուկ հոգատարութեամբ էր տարվում մարդու ստեղծագործութեան աշխատանքը։

Հազիւ լոյս աշխարհ դուրս բերուեց նա, ինչպէս Արարիչը նրա տրամադրութեանը յանձնեց ամբողջ մեր Երկիրը։

Մարդը մեր մոլորակի, նրա շնչաւոր էակների և անկենդան նիւթի տէրն ու տնօրէնը դարձաւ։ Ամեն էակ, ամեն առարկայ բացատրվում էր մարդու օգտակարութեան տեսակէտից։

Ահա այդպէս էին նայում մի ժամանակ մարդու ծագման հարցի վրայ. վերոյիշեալ կերպով էին որոշում նրա դերը և տեղը բնութեան մէջ։

Անկասկած, եթէ հարցի այդօրինակ բացատրութիւնը մնար մինչև մեր օրերը, մենք երկար ժամանակ կը զրկուէինք աւելի ճշգրիտ իմանալու հնարաւորութիւնից, թէ ի՞նչպէս յայտնուեց մարդը, ո՞րտեղից և ի՞նչ դեր է կատարում նա ամբողջ տիեզերքում և մասնաւորապէս մեր մոլորակի վրայ։

Ի՞նչը կարող է լինել աւելի պարզ, քան յիշուած բացատրութիւնը։ Ստեղծագործող ոյժը առաջ բերեց մարդուն—ահա ամեն ինչ. այստեղ կանգ պիտի առնել. առաջ գնալու տեղ չը կայ։

Բայց այնուամենայնիւ չիմացանք, թէ ի՞նչպէս ստեղծուեց մարդը, ո՞վ է նա և ո՞րտեղից է։

Բոլորովին ուրիշ բան է, երբ դիմում են այդ հարցի բացատրութեանը այլ կողմից, այն է՝ երբ դիմում են գիտութեան օգնութեանը։

Գիտութիւնը հաստատել է, որ ամբողջ տիեզերքում ոչ միայն գոյութիւն ունի մեր մոլորակը, այլ և նման մոլորակներ մեծ թւով ցրուած են նրա չորս կողմը։ Մեր Երկիրը կենտրոնը չէ տիեզերքի։ Համեմատելով ուրիշ շատ մոլորակների հետ, Երկիրը չնչին մեծութիւն ունեցող մի գունդ է։ Կան և մեր Երկրի նման մոլորակներ, թերևս բնակչութիւն էլ ունեցող։

Մեր Երկրի, ինչպէս և մի քանի հարևան մոլորակների նախահայրը եղել է Արևը։ Մի ժամանակ միացած, անբաժան ձուլուած միգանման զանգուած էին ներկայացնում մեր Երկիրը, հարևան մոլորակները և Արևը։ Այդ սկզբնական միգանման զանգուածից առանձնանալով Երկիրը սկսել էր ինքնուրոյն զարգանալ։ Նոյն ձևով առանձնացել են սկզբնական զանգուածից և

Երկրի հարևան-մոլորակները՝ Մարս, Վեներա, Իւպիտեր և ուրիշները։ Բայց կանգ չառնենք Երկրի ծագման զարգացման հարցի վրայ։ Գիտութիւնը ցոյց է տալիս, որ Երկիրը, ինչպէս և միւս մոլորակները տիեզերքում միատեսակ ծագումն են ունեցել, միանման միգային զանգուածներից են առաջացել, զարգացման նման ուղիներով առաջ գնացել։

Ինչո՞ւ, ուրեմն, միմիայն մեր Երկիրը հաշուել տիեզերքի կենտրոնը։ Կան ուրիշ Երկիրներ էլ, բնակելի և աւելի մեծ։

Գիտական փակտերը ցոյց են տալիս նաև, որ մարդը ամենևին բնութեան թագաւորը չէ։ Նա «ստեղծուել» է ոչ բոլորովին անկախ միւս էակներից. նա չէ հանդիսանում «յատուկ ստեղծագործութեան» հետևանք։ Այդ բացատրութեան անհիմն լինելը արդէն գիտութիւնը ապացուցեց։

Գիտութիւնը, որ ոչինչ չէ ապացուցում առանց առատ փակտերի, մէջ բերում է հետևեալ բացատրութիւնը։

Մարդը նոյն կենդանին, նոյն անասունն է, ինչպէս և բոլոր մնացեալ շնչաւոր էակները, բայց աւելի բարձր և աւելի բարդ ու հարուստ պսիխիկայով*)։

Պսիխիկայի բարդութիւնը, այնուամենայնիւ, մեզ իրաւունք չէ տալիս մարդուն բոլորովին առանձնացնել միւս կենդանիներից։ Նա չէ ստեղծուած յատուկ աշխատանքով. շրջապատող բնութիւնը իր ամբողջութեամբ միմիայն նրան ծառայելու համար չէ։ Մարդու յայտնուելը սերտ կապուած է օրգանական աշխարհի ծագման հետ։

Միակ նրա առաւելութիւնը ի դիմաց միւս էակների այն է, որ մարդուն կարելի է տեղ տալ օրգանական աշխարհի ամենաբարձր աստիճանների վրայ։

Աւելորդ չէր լինի նախ խօսել փոքր ինչ այդ օրգանական աշխարհի մասին, ապա կը դիմենք մարդու և կենդանիների կապակցութեան բացատրութեանը։

Թէ ինչպիսի բնաւորութիւն է կրում կենդանական, օրգանական աշխարհը, այդ հարցի բացատրութիւնը մեծ փոփոխութիւնների է ենթարկուել։

---

*) Սակայն այդ միմիայն մեր մոլորակի վրայ։ Շատ հաւանական է, որ գոյութիւն ունենան էակներ աւելի բարձր ու բարդ պսիխիկայով բնակչութիւն ունեցող այն մոլորակների վրայ, որոնք զարգացման կողմից աւելի առաջ են գնացել, քան մեր Երկիրը։ Որ այդպիսի մոլորակներ կարող են գոյութիւն ունենալ, այդ մենք անկարող ենք ժխտել։ Շատ են խօսում օրինակ Մարսի մասին, որը զարգացմամբ աւելի բարձր է մեր Երկրից։ Ենթադրում են, որ նրա բնակիչներն էլ մարդուց աւելի բարձր պսիխիկա ունեն։

Քիչ առաջ տեսանք, որ մի ժամանակ մարդուն յատուկ ստեղծագործութեան արդիւնք էին համարում։ Այդպէս էր բացատրվում և կենդանիների ծագումը։ Իւրաքանչիւր օրգանական ձև, իւրաքանչիւր միանման կենդանական տեսակ ստեղծուել է առանձին, իւրաքանչիւրը իրարից անկախ և տարբեր ժամանակներում։ Այդ բացատրութիւնը տիրում էր ոչ միայն հին դարերում, նոյն իսկ, մանաւանդ, միջին դարերում, տակաւին մինչև անցեալ դարի 40—60-ական թուականները ընդհանուրի կարծիքն էր այդ։ Եւ այդ կարծիքը գերակշռում էր բոլոր միւս բացատրութիւնները։

Անցեալ դարի 50—60-ական թուականներից, երբ յայտնուեց հռչակաւոր բնագէտ Չարլզ Դարվինի «Տեսակների ծագում» (1859 թ.) մեծ աշխատութիւնը, այդ րօպէից տիրող բացատրութեան խախուտ հիմքերը բոլորովին քայքայուեցին. սկսեց գրաւել միւս, աւելի բնական բացատրութիւնը։

Կենդանական աշխարհը իրանից մի ամբողջութիւն է ներկայացնում։ Իւրաքանչիւր կենդանական տեսակ անկախ չէ միւս տեսակներից։ Տեսակները կայուն չեն, փոփոխվում են։ Մէկից ժամանակի ընթացքում առաջանում է մի ուրիշ տեսակ։ Սկզբում յայտնուել են պարզ կենդանիները, այնուհետև զարգանում են առաջիններից փոքր ինչ բարձր կազմուածք ունեցողները և ապա վերջիններից՝ աւելի զարգացածները։ Մէկը պատճառ է միւսի առաջ գալուն։

Տակաւին հին դարերում կային այդպիսի բացատրութեան կողմնակիցներ, ինչպիսին է մանաւանդ Արիստոտելը*)։

Միջին դարերում էլ եղան յայտնի կողմնակիցներ, և մանաւանդ շատ էր այդպիսիների թիւը վերջին դարերում (XVIII, XIX դ.), բայց և այնպէս միմիայն Դարվինից սկսած այդ բացատրութիւնը ընդհանուրի սեփականութիւն դարձաւ։

Օրգանական աշխարհի ամբողջութեան, անքակտելիութեան հիպօթեզը Դարվինը իր բազմաթիւ փակտերով աւելի ևս ապացուցեց, և հիպօթեզը հաստատ թէօրայի վերածուեց։

Դարվինն էլ առաջադրեց մարդու ծագման հարցը։ Մի քանի աշխատութիւն նուիրեց այդ հարցին։ Բազմաթիւ փակ-

*) Արիստոտելը կողմնակից էր օրգանական աշխարհի ամբողջութեան։ Նա ենթադրում էր նոյնիսկ, թէ կապուած են իրար հետ կենդանական և բուսական աշխարհները։ Ցոյց էր տալիս և անցողական բոյս-կենդանիների վրայ (սակայն անաջող օրինակներ)։ Աւելի խորն էր մտնում։ Ենթադրում էր, որ օրգանական աշխարհը (կենդանական և բուսական) իր սկիզբը առել է անկենդան նիւթից, անօրգանական աշխարհից։

տերով ապացուցում էր, որ մարդուն չէ կարելի զատել միւս կենդանիների շարքերից։

Մարդն ևս կենդանական ծագում ունի։ Կապուած են իրար հետ բոլոր կենդանական տեսակները. այնուհետև, ամենաբարձր կենդանիներից յետոյ, գալիս է մարդը։ Մարդն էլ ուրեմն կենդանի է, իր պսիխիկայով անպայման բարձր միւսներից։

Այդպիսի ենթադրութիւնից յետոյ հետևում են փակտերը։

Բաւական է աչքի անցնել փակտերից մի քանիսը և մարդու ծագման հարցի մթութիւնը փարատվում է, հաստատվում է նրա կենդանական բնոյթը։

---

Նայենք օրգանական աշխարհին։ Մի ընդհանուր երևոյթ, մի ընդհանուր յատկութիւն կապում է բոլոր շնչաւոր էակներին, սկսած մարդուց մինչև ամենապարզ օրգանիզմները։

Իւրաքանչիւր օրգանիզմի մարմինը բաղկացած է բազմաթիւ մանրիկ բջիջներից*)։ Մարդու մարմինը նոյնպէս կազմուած է այդպիսի անթիւ բջիջներից։ Բջիջների քիմիական կազմը, նրանց կենսական յատկութիւնները միանման են։ Մարդու մարմնի բջիջները բացառութիւն չեն կազմում։

Բարձր կազմուածքով կենդանիների մօտ նկատվում են, որ բջիջները համախմբուելով գրուպպաների՝ հյուսվածքներ են կազմում. օրինակ՝ մկանային հիւսուածք, նեարդային հիւսուածք, էպիտելիալ հիւսուածք, ոսկրային հիւսուածք և այլն։ Բջիջների նմանօրինակ գրուպպաներ գոյութիւն ունեն նաև մարդու մարմնի մէջ։

Տարբեր հիւսուածքներ որոշ յարաբերութիւնների մէջ մտնելով, միանալով կազմում են տարբեր գործարաններ, օրինակ՝ զգացողութեան գործարաններ, սննդառութեան գործարաններ, շնչառութեան և ուրիշ։ Գործարանների կազմութիւնը ընդհանրապէս միանման է մարդու և կենդանիների մօտ։ Իհարկէ կան տարբերութիւններ. որքան ցած իջնենք կենդանական աշխարհի աւելի ստորին աստիճանները, այնքան տարբերութիւնները մեծ են։

Բայց եթէ մենք համեմատենք իրար հետ բոլոր ողնաշարաւոր կենդանիներին, այդտեղ աւելի շատ նմանութիւն կը

---

*) Ամենապարզ, ամենաստորին օրգանիզմները բաղկացած են միմիայն մէկ բջիջից։

գտնենք։ Եթէ նոյնիսկ մէկնումէկի մօտ որոշ գործարանը տարբերվում է զգալի չափով, այնուամենայնիւ սաղմնաբանութիւնը, ուսումնասիրելով գործարանների համեմատական զարգացումը, հաստատում է եղած ընդհանուր կապակցութիւնը։

Գանք աւելի բարձր ողնաշարաւորներին։ Գործարանները ընդհանուր առմամբ շատ նման են, տարբերութիւնը աւելի է թուլանում։

Բոլոր ողնաշարաւորները, ի հարկէ և մարդը, ունեն ողնասիւն. նա բաղկացած է ողներից և պարունակում է իր մէջ ողնուղեղ։ Եթէ կայ տարբերութիւն այդ ողնասիւնի, տարբերութիւնը միմիայն ողների քանակութեան և մեծութեան մէջ է։

Հարցը չընդհանրացնենք։ Դիմենք կենդանական աշխարհի ամենաբարձր տիպարներին՝ կապկին և մարդուն։ Կապիկներից վերցնենք մարդանման կոչուող կապիկներին (գորիլլա, շիմպանզէ, օրանգ, գիբբոն)։ Այդ կապիկները և մարդը իրարից շատ քիչ են տարբերվում։ Աֆրիկայի խուլ անտառների մարդկային վայրենի ցեղերը թէ արտաքինով և թէ ուրիշ յատկութիւններով շատ են նման կապիկներին։

Համեմատենք մարդանման կապիկներին մարդու հետ։ Նայենք բոլորի կմախքները։ Նմանութիւնը մեծ է։ Եթէ կայ տարբերութիւն, այդ՝ ոսկրների չնչին կերպով փոխուած ձևի մէջ է, մեծութեան կամ քանակի մէջ։

Բոլորն էլ ունեն ողնասիւն։ Մարդը ունի պարանոցի 7 ողներ, մէջքի՝ 12, գոտու՝ 5. Մնացեալ ողները կցուած են, միացած։

Գօրիլլան ևս ունի մարդու ողների դասաւորութիւնը, միայն մէջքի ողների թիւը 13 է, իսկ գոտունը՝ 4. Որովհետև մէջքի ողների թիւը 13 է, այդ պատճառով էլ նա ունի 13 զոյգ կողեր, այն ինչ մարդը՝ 12 *)։

Թուենք վերևի վերջաւորութեան ոսկրները բոլորի մօտ։ Սկսենք թիակից. անրակ, բազկոսկր, ծղիկ, և արմունկոսկր, դաստակի, մատնարմատի ոսկրներ և վերջապէս մատնոսկրներ։

Ահա և ներքևի վերջաւորութիւնը։ Սկսենք կոնքից. ազդր, մեծ ոլոգ, փոքր ոլոգ, ծնկոսկր, նրբանի, մատնարմատի ոսկրներ և մատնոսկրներ։

Ինչ վերաբերում է մնացեալին, բոլոր միւս ոսկրները

---

*) Լինում են դէպքեր, երբ մարդը ունենում է 13 կող, նմանապէս նկատուել են կապիկների օրինակներ՝ ունեցող գոտու 5 ողներ, 12 զոյգ էլ կող։ Լոնդոնում կայ օրանգի մի կմախք՝ ողների և կողերի յիշեալ թուով։

ունեն նույնպես ընդհանուր մեծ նմանություն։

Յիշեալ ոսկրների խմբումները միանման են ոչ թէ միմիայն կապիկների և մարդու միջև, այլ համանուն, նման ոսկրներ կարելի է գտնել և միւս կաթնասունների մօտ, ինչպես ձի, կով, շուն, կատու, առիւծ, ռնգեղջիւր և այլն, նոյնիսկ թռչունների և սողունների մօտ։

Նմանությունը ընդհանուր է. տարբերությունը այս կամ այն ոսկրի բացակայությունն է։ Օրինակ՝ մարդու լսողութեան գործարանում կան հետևեալ ոսկրները. մուրճ, սալ, ասպանդակ։ Աւելի ստորին աստիճաններում գտնուող կենդանիների մօտ գոյություն ունեն յիշեալ ոսկրները, բայց միացած մի ոսկրի մէջ, իրարից անբաժան։ Եւ շատ այդպիսի ֆակտեր ուրիշ ոսկրների վերաբերեալ։

Եթէ համեմատենք բոլոր ողնաշարաւորների՝ սկսած մարդուց մինչև ստորին աստիճանները՝ միւս գործարանները, դարձեալ նկատվում է ընդհանուր նմանություն։

Աւելի բնորոշ է պատկերանում մեզ մարդու կապակցությունը կենդանիների հետ, երբ դիմում ենք սաղմնաբանութեան, նրա ֆակտերին։ Սաղմնաբանությունը ուսումնասիրում է իւրաքանչիւր տեսակի սաղմի զարգացումը։

Այդ զարգացումը բաժանվում է որոշ ֆազերի։ Կանգ առնենք գլխաւոր ֆազերի վրայ։

Իւրաքանչիւր օրգանիզմ զարգանում է մէկ բջիջից։ Այդ մէկ բջիջը ստացվում է իգական բջիջի (ձուային բջիջ) և արական բջիջի (սերմնային բջիջ) միացումից։ Միացման պրօցեսը անուանում են բեղմնաւորություն։ Երկու բջիջների միացումից յետոյ ստացուած մէկ բջիջը բաժանվում է, իւրաքանչիւր բաժանման միջոցին երկտակ աւելանում (2, 4, 8, 16... և այլն)։ Բաժանման պրօցեսը որոշ ժամանակ է տեւում։ Այդպիսի երևոյթ նկատվում է և մարդու մօտ։ Իգական և արական բջիջները միանում են, մէկ բջիջը նոյնպէս սկսում է բաժանման ենթարկուել և անցնում է բջիջների տարբեր համախմբման ֆազեր։ Նայենք մի քանի ֆազերը։

Նախ մեր առաջն է մէկ բջիջ։ Բնութեան մէջ գոյություն ունի միաբջիջ կենդանի էակ, որը իր պարզութեամբ շատ մօտենում է այդ մէկ բջիջին։ Այդ էակն է ամեօբա։ Ինչպես Հեկկելն է ասում, մարդու ձուային բջիջը քանի դեռ թաղանթով չէ ծածկուել, շատ է յիշեցնում ամեօբային։

Գալիս է մի ուրիշ ֆազա, երբ բջիջը մի քանի անգամ բաժանման ենթարկուած համախմբվում է գնդաձև։ Այդ գըն-

դին Հեկկելը անուանում է morula (մօրուլա)։ Նա բաղկացած է միանման գնդաձև բջիջներից։ Կեանքի ծագման սկզբնական շրջաններում շատ հաւանական է, որ գոյութիւն են ունեցել morula-ի նման օրգանիզմներ։ Այժմ գոյութիւն ունեցող մի քանի տեսակները թոյլ են տալիս այդպիսի ենթադրութիւն անելու։ Այդ սկզբնական օրգանիզմներին Հեկկելը կոչում է moreae, synamoeba (ամեօբաների համախմբում) և այժմ եղածներից, նրա կարծիքով, morula-ին և երբեմնի եղած synamoeba-ին յիշեցնում են zobosae բջիջների խմբումները։

Յետագայ փազան է blastula (բլաստուլա) կամ սաղմնափամփուշտի շրջան։ Morula-ի խմբուած բջիջները այնպէս են դասաւորվում, որ գոյանում է մի շրջան, մէջը լի հեղուկով։ Շրջանի պատը կազմուած է մէկ շարք բջիջներից։ Մարդու սաղմն էլ անցնում է բլաստուլայի շրջանը։ Այժմ եղածներից, ըստ Հեկկելի, volvox globator catalacta օրգանիզմները շատ են յիշեցնում բլաստուլայի նման սկզբնական օրգանիզմներին։

Այստեղ կանգ առնենք։ Հեկկելը իր մի նշանաւոր գրքում մանրամասնօրէն քննում է այդ կապակցութեան հարցը։ Նա աշխատում է աւելի շատ փակտերով պարզել, թէ ինչպէս մարդը և ստորին կենդանիները կապվում են իրար հետ շնորհիւ անցողական օրգանիզմների*)։

Դիմենք դարձեալ սաղմնաբանութեան, բայց այս անգամ անցնենք սաղմի զարգացման բարձր շրջանները և սահմանափակուենք որոշ տիպի օրգանիզմներով։

Շատ գրքերում, ուր խօսվում է դարվինիզմի մասին կամ համեմատական սաղմնաբանութեան մասին, կարելի է հանդիպել մի շատ հետաքրքական պատկերի։ Այդ՝ մի քանի կենդանիների և մարդու սաղմերի զարգացման համեմատական ցուցակն է։ Օրինակ՝ հէնց Րօմանէսի գրքում (Романес. «Теорія Дарвина», էջ 118) կայ մի նկար, ուր ներկայացուած է հետևեալ կենդանիների սաղմերի համեմատական զարգացումը—ձուկ, սալամանդր, կրիայ, հաւի ճուտ, խոզ, հորթ, ճագար և մարդ։

Նկարագրուած է 3 շրջան։ Առաջին շրջանում շատ դժուար է բոլոր սաղմերի մէջ տարբերութիւն նկատել։ Բոլորն էլ ձըկան կերպարանք, ընդհանուր նմանողութիւն ունեն**)։ Երկրորդ շրջանում ձուկն ու սալամանդրը տարբերվում են մնացեալներից, որոնք դեռ ևս չեն կորցրել ընդհանուր նմանութիւնը։

*) Յիշեալ կենդանիներից ամենից վաղ ձուկն է յայտնուել։

**) Геккель. «Естественныя исторія міротворенія», հատ. II.

Միմիայն երրորդ շրջանում կարելի է բնորոշել, թէ ինչ օրգանիզմ է մեր առաջ։ Անպայման այս ցուցակին կարելի է միացնել և կապկին և ուրիշ շատ կենդանիների։ Մի բան է հետաքրքրական. որքան կենդանիները իրար աւելի մօտ են և նման, նոյնքան երկար է տևում և նրանց սաղմերի նմանութիւնը։ Օրինակ՝ մարդու և կապկի սաղմերը երկար ժամանակ իրար նման են լինում, նմանապէս շան և գայլի սաղմերը։

Մի հարց է ծագում. ինչո՞ւ յիշեալ օրգանիզմների սաղմերը անցնում են որոշ ժամանակ նման շրջաններ։ Պարզ է, որ առանց պատճառի մարդու սաղմը նման չի լինի միւս օրգանիզմների սաղմերին որոշ աստիճաններում։

Ուրեմն մարդը առանձնայատուկ տեղ չէ բռնում բնութեան մէջ. նա ևս զարգանում է կենդանիների պէս, և սաղմերի նմանութիւնը միմիայն ապացուցում է, որ մարդը կապուած է կենդանիների հետ, կապուած է ամբողջ օրգանական աշխարհի հետ։

Ուսումնասիրելով կենդանիների սաղմերի զարգացման աստիճանները, մի քանի գիտնականներ առաջադրեցին մի օրէնք, որ կոչվում է բիօգենետիկ կամ կենսածնական հիմնական օրէնք։

Օրէնքի էութիւնը այս է. իւրաքանչիւր օրգանական տեսակի սաղմի զարգացումը պատկերացնում է մեզ, թէ ինչպէս է զարգացել նրա տոհմը, ովքեր էին նրա նախահայրերը։

Նայենք մարդու սաղմի զարգացմանը։ Սկզբում մէկ բջիջ (նման ամեօբանիրի), յետոյ morula-ի շրջան (երբեմնի գոյութիւն ունեցող moreae, synamoeba-ի յիշեցնող այժմեան lobosae), բլաստուլայի շրջան (երբեմնի blasteadae—դրանց յիշեցնում են արդի volvox globator).

Որոշ շրջանում սաղմը նման է ձկան սաղմին. առաջ է գընում զարգացումը նման միւս ողնաշարաւորների, հետզհետէ փոփոխվում, մինչև վերջին շրջանը գնում է կապկի հետ և ապա կապկից էլ տարբերվում։

Նրա սաղմի զարգացումը ցոյց է տալիս մեզ, ի հարկէ ոչ լիակատար, թէ ինչպէս է զարգացել մարդկային ցեղը, որոնք էին նրա նախահայրերը։

Եւ օրգանիզմների ծագման պատմութիւնը ցոյց է տալիս, թէ ճիշտ որ՝ սկիզբներում առաջացել են միաբջիջ շատ պարզ էակներ, յետոյ բազմաբջիջ անողնաշարաւորները (volvox globator*), սպունգը, պօլիպները, միջատներ, փափկամորթեր և

*) Բոյսանման ստորին կենդանի, թելաւոր ինֆուզօրիա (жгутиковая

այլն)։ Ապա գալիս են բազմաբջիջ ողնաշարաւորները՝ ձկներ, սողուններ, թռչուններ, կաթնասուններ. վերջիններին են պատկանում ի միջի այլոց կապիկը և մարդը։

Օրգանական աշխարհը կարելի է ներկայացնել ծառի ձևով, նրա ճիւղերով, ճիւղիկներով։ Ամենաբարձր տեղը գրաւում են կապիկը, ապա մարդը։

Կան, շատ փակտեր կան, որոնք ապացուցում են մարդու ծագումը կենդանիներից, նրանց հետ ունեցած ազգակցութիւնը։ Բերենք մի քանի հետաքրքրական փակտեր ևս։

Քիչ առաջ ցոյց տրուած էր բջիջների և հիւսուածքների նմանութիւնը մարդու և կենդանիների մօտ։ Մի նկատուած փակտ աւելի ևս հաստատում է նրանց կազմութեան և կազմուածքի ընդհանուր նմանութիւնը։ Մի քանի հիւանդութիւններ, որոնց զոհ է դառնում մարդը, միաժամանակ ազատ չեն թողնում իրանց մահաբեր ազդեցութիւնից և շատ կենդանիներին։ «Այսպիսի հիւանդութիւններ, ինչպէս ջրավախութիւն, ծաղիկ, խլախտ, խօլերա և քոս, անցնում են մարդկանցից կենդանիներին և ընդհակառակը» (Уоллес. «Дарвинизм», գլ. XV)։ Որ կապիկները հիւանդանում և մեռնում են թոքախտից, այդ ևս փակտ է։ Նոյնիսկ, եթէ չենք սխալվում, սիֆիլիսն էլ հաւասար ներգործում է կապիկների վրայ։

Ուօլլէսը ասում է. կան կապիկներ, որոնք մարդուց ոչ պակաս սիրում են թէյ, սուրճ, սպիրտ, ծխախոտ։ Այդ փակտը բացատրվում է նրանով, որ նրանց ճաշակելիքի նեարդերը չեն տարբերվում մարդու ճաշակելիքի նեարդերից։ Ունեն միանման կազմութիւն։

Կենդանիների մօտ նկատվում են որոշ յատկութիւնների մնացորդներ, որոշ գործարանների մնացորդներ։ Օրինակ՝ թռչուն ապտերիքսը (apterix, կիվի) զուրկ է թռչուններին յատուկ ուժեղ թևերից։ Նրա թևերը շատ փոքր են, աւելի շուտ թևերի մնացորդներ են։ Ապտերիքսի նախահայրերը ունեցել են ուժեղ թևեր. երբ գոյութեան պայմանները փոխուեցին, երբ ստեղծուեցին այնպիսի պայմաններ, որոնք աւելորդ դարձրին ուժեղ թևեր ունենալը, այդ գործարանը անհետանալու ուղին անցաւ։ Եւ ապտերիքսի մօտ տեսնում ենք անզարգացած թևեր։

Կէտը, որի նախահայրերը եղել են չորքոտանի ցամաքի կաթնասուններ, ունի վերևի վերջաւորութիւնները՝ վերածուած

---

инфузорія), որին բուսաբանները դասում են ստորին բոյսերի, ջրիմուռների շարքը։

լողաթաթերի, իսկ ներքևի վերջաւորութիւններից կան միմիայն ոսկրային մնացորդներ, օրինակ՝ կոնքը, մի քանիսի մօտ նոյնիսկ ազդրը և մեծ ոլոգը։

Մարդն էլ զուրկ չէ այդպիսի մնացորդներից։ Նա ունի որոշ յատկութիւններ, գործարանների այնպիսի մնացորդներ, որոնք աւելի ևս ամրացնում են նրա կապը կենդանիների հետ։

Նախ և առաջ կոյր աղիքը։ Այդ աղիքը անպէտք մի կտոր է. հիւանդութիւնների պատճառ է նա դառնում և շատ դէպքերում նոյնիսկ նրա բորբոքումը մարդուն մահուան դուռն է բերում։ Բուսակեր կենդանիների համար կոյր աղիքը սննդառութեան գործարանի անհրաժեշտ մասերից մինն է։ «Ստորին բուսակեր կաթնասունների մօտ նա շատ երկար է լինում։ Քըսակաւոր կոալայի (коала) մօտ ամբողջ նրա մարմնից երեք անգամ երկար է»։ «Օրանգի մօտ կոյր աղիքը երկար է և ոլորուն»։ (Дарвин. «Происхожденіе человѣка»).

Մարդու կոյր աղիքը շատ փոքր է։ Լինում են անհատներ, որոնց մօտ հազիւ է նշմարվում։ Մարդու սնունդը փոխուել է, նրա գլխաւոր սնունդը միսն է։ Կոյր աղիքը այլևս կորցրել է իր նշանակութիւնը, այն ինչ նրա բուսակեր նախահայրերին մեծ ծառայութիւն է անում։ Օրանգը բուսակեր է և այդ պատճառով էլ նրա կոյր աղիքը աւելի մեծ է, քան մարդունը։ Մարդու մօտ այդ աղիքը անհետանալու վրայ է. այդ աղիքը անցել է նրան ժառանգաբար նախահայրերից։ Այդ ևս մի ապացոյց է մարդու կենդանական ծագման թէօրիային։

Նոյնիսկ նոր ֆակտերը գալիս են հաստատելու, որ մարդու մարմնի մէջ աւելորդ է նաև հաստ աղիքը։ Դա ևս համարվում է մնացորդ, որը ժառանգել է մարդը իր կաթնասուն նախահայրերից։ Յիշեալ նախահայրերի համար դա մի անհրաժեշտ գործարան էր, այն ինչ՝ մարդուն բացի վնասից նա ոչ մի օգուտ չէ բերում։ Հաստ աղիքում կուտակվում են անթիւ միկրօբներ և օրգանիզմը վարակում։ Ահա ինչ է ասում յայտնի բնախօս-բժիշկ Մեչնիկօվը նրա մասին։ Ուսումնասիրելով հաստ աղիքների բնական պատմութիւնը, նա տեսնում է, որ «այդ գործարանը կատարելապէս զարգացած է կաթնասունների մօտ։ Կաթնասունները մեծ մասամբ ցամաքային կեանք են վարում և խիստ շարժուն են։ Մեծ մասը նրանցից պիտի վազէ շատ արագ կամ սնունդի ետևից (գիշատիչներ), կամ էլ թշնամիներից ազատուելու համար։ Այդպիսի րոպէներին կանգնելը, աղիքները դատարկելու համար, մեծ անյարմարութիւններ է պատճառում։ Ընդհակառակը, քակորը պահելու համար յատուկ շտե-

*մարան ունենալը մեծ առաւելութիւն է տալիս գոյութեան կռւում (*Мечников. «Этюды о природѣ человѣка»*).*

*Մարդու համար առիթ չկայ սնունդի մնացորդները պահելու աղիքում։ Հաստ աղիքը աւելորդ մնացորդ է։ Սննդառութեան մէջ գլխաւոր դեր են կատարում ստամոքսը և բարակ աղիքները։ Մեչնիկօվը ասում է, որ կոյր աղիքի հետ միաժամանակ «կարելի է և հաստ աղիքը դասել մարդու առողջութեան և կեանքի համար վնասակար գործարանների շարքը»։*

*Եղել են փորձեր հաստ աղիքը հեռացնելու համար։ «Կերտէն միաժամանակ բարակ աղիքների մի մասի հետ հեռացրել է նաև հաստ աղիքի մեծ մասը, թողնելով միմիայն վերջին կտորը։ Հիւանդը տանելով 8 յաջորդական աղիքային օպերացիաներ՝ բոլորովին առողջացել էր»։* (Мечников. «Эт. о пр. ч.»).

*Անցնենք վերջին երկու ֆակտերին և բաւականանանք դրանով։*

*Կենդանիները ունեն այնպիսի մկաններ, որոնք ղեկավարում են մարմնի մաշկի շարժումները։ Այդպիսի մկանների մնացորդներ կան նաև մարդու մօտ։ Մնացել են ճակատի և գլխի մաշկը շարժող մկանները և այն էլ շատ սակաւ մարդկանց մօտ Այդ մնացորդ-մկանները դարձեալ ժառանգուած են նախահայրերից։*

*Կենդանիների մէջ գոյութիւն ունի այսպէս կոչուող ծնողական բնազդ, որ սակայն երկարատև չէ լինում։ Ծնողները առհասարակ հոգ են տանում, փայփայում իրենց ձագուկներին գլխաւորապէս նրանց անչափահաս դրութեան ժամանակ։ Հազիւ սերունդը ամրապնդվում է, ծնողական բնազդը թուլանում, չքանում է և սերունդը թողնվում է իր վիճակին։ Ծնողները այլևս մոռանում են հոգալ նրա մասին։ «Ծնողական բնազդը անհետանում է, նոյն իսկ նրան փոխարինում է թշնամական զգացումը»։* (Шимкевич. «Отцы и дѣти»*).*

*Նոյնը չէ՞ և մարդկային կեանքում։ «Ընդհանուր իրողութիւն է այդ և մարդկային ընտանիքում։ Ծնողները աւելի շատ սիրում են փոքրիկ երեխաներին և զգալի չափով նրանց սէրը կորցնում է իր ջերմութիւնը երեխաների՝ հասակ առնելու ժամանակ. Նոյնիսկ հայրերի և չափահաս զաւակների միջև յաճախ թշնամական յարաբերութիւններ են ստեղծվում»։ (*Шимкевич. «Отцы и дѣти»*). Բաւականանանք ֆակտերով*)։*

---

**) Յօդուածի վերջը կը թուենք մի քանի աղբիւրներ, որոնցից կարելի է քաղել աւելի շատ ֆակտեր։*

Մեզ թւում է, որ բերուած փակտերը պարզում են այն կապը, որ գոյութիւն ունի մարդու և կենդանիների միջև։

Պարզ է, որ մարդը չէ «ստեղծուել» յատուկ պլանով։ Եւ դեռ նրա բացակայութեան ժամանակ գոյութիւն ունէին կենդանական տեսակներ, որոնք լիապէս վայելում էին երկրի հարստութիւնները։ Եւ այդ կենդանիների ամենաբարձր տեսակներից միայն առաջ է գալիս մի ուրիշ, աւելի բարձր կենդանի, որ կոչվում է մարդ։

(Կը շարունակուի)

---

# ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԻՒՆԸ

## *Լ. Ն. Տօլստօյի*

---

(*Թարգմանչի առաջաբանով*)

---

## ԱՌԱՋԱԲԱՆ

*Մրրկածուփ կեանքի բարդ ու ցաւատանջ ժխորում դարերով դեգերող մարդկութիւնը իր գիտակցական կօլլեկտիվ կենցաղի անյիշելի անցեալից սկսած մինչև այսօր շատ յաճախ ընկել է թախծալից մտորումների մէջ, թէ ո՞րն է մարդկային այս կեանքի հուժկու երթի վախճանական ձգտման կէտը, ո՞րն է նրա այն հիմնական սկզբունքը, որով արդարանար այդ նըպատակի իրագործման տենչալից ձգտումը։ Ինչու՞ տիեզերական անողորմ ցաւ ու տառապանքի, համաշխարհային թևատարած վշտի իբր յաւիտենական մարմնացում անպայմանօրէն պէտք է հռչակուի թշուառ ու ապաբախտ մարդը... Ծնուելով առանց գիտակցութեան, աշխարհ մտնելով առանց իր նախնական ցանկութեան՝ ինչու՞ նա հէնց առաջին քայլից պէտք է ենթակայ լինի ամեն տանջանք ու հալածանքի. ինչու՞ նա, այդ անօգնական մարդը, արիւն ու արցունքով, հիւանդութեամբ ու ցաւով անցկացնէ իր կարճ ու վշտոտ կեանքը և ապա մեռնի, մեռնի նոյնպէս չիմանալով, թէ ինչու՞ ապրեց, ապրեց տանջանքով, և ինչու՞ է մեռնում, կորչում յաւիտեան... Ի՞նչ բան է կամ ո՞րն է այն յաւիտենականութիւնը՝ արտաքոյ ժամանակի և տարածութեան, որի անըմբռնելի ծալքերից բնութիւնը դուրս է կորզում բիւր բիւրոց կարելիութիւններից մի չնչին մասնիկ—անօգնական, ողորմուկ մարդուն և կարճ ժամանակ բովելով նրան կեանքի հնոցում, ապա կրկին նետում նոյն անըմբռնելի յաւիտենականութեան խորունկ ծոցը։ Ինչու՞ համար են նրան տրուած կեանքի այն մի քանի տասնեակ տա-*

րինները, որոնք անխուսափելի կերպով պէտք է հալուեն կեանքի մռայլ դառնութեան մրուրում։ Եթէ, վերջապէս, մարդու անխուսափելի բաժինն է սոսկ տառապանքն ու մահը, ապա ինչու ապրել, ապրել մի կարճ կեանք և յետոյ մեռնել՝ հակառակ մարմնի և հոգու բուռն ցանկութեան. ինչու այդ դաժան, անողորմ ճակատագրի դէմ չը յայտարարել մի սոսկալի կռիւ՝ անգամ մահուան տագնապով, ինչու չը յաղթահարել նրան սեփական անձի ոչնչացմամբ...

Մարդկային հանճարեղ հոգու բողոքող ու անհաշտ էութիւնը յաճախ է լարել իր բոլոր զօրութիւնն ու ջանքը՝ յուսահատուելով տանջող ու մաշող իրականութիւնից՝ պարզելու համար թիւրիմաց կեանքի տիեզերական առեղծուածը։ Մանաւանդ մարդկութեան այդօրինակ տենդոտ ձգտումները շատ յաճախ արտայայտուել են կեանքի այն յուսահատ ճգնաժամերին, երբ ապրելը եղել է առաւել դառն, առաւել տաժանելի, երբ մարդկային հասարակական կեանքը՝ բարձրացած լքման գագաթնակէտին՝ թեւակոխել է ձևերի փոխանցման տագնապալից շրջանները...

Մարդկային հասարակութեան տառապանքի դարը եղել է խիստ երկար. իր մանկութեան օրրանից սկսած նա ենթակայ է երկու տարրերի գոռ հարուածներին, բնութեան և մարդկութեան։ Մարդկութեան հասարակական կեանքը այնպէս է եղել դասաւորուած, որ մարդը բնութեան օգտակար ույժերը դարերի ընթացքում շահագործել է հէնց իր նման մարդու միջոցով։ Մարդը մարդու ձեռքին դարձել է շահագործման զէնք. սեփական ճկունութեամբ ու տոկունութեամբ մէկի համար շատերը եղել են պատուանդան, հիմունք մի բուրգի, որի կատարին իրերի դասաւորութեամբ հանգիստ ու անխռով տեղ է գրաւել այդ մէկը։ Եւ իրերի դրութեամբ հասարակական զանգուածը իներցիայով հետևել է մէկերին և ինքը դառնալով պատուանդան՝ կառուցել է բուրգեր... Դարերը սնել ու խորացրել են այդ բուրգերի համասփիւռ արմատները։ Բուրգը իր բարդ և ամրակուռ կառուցուածքով, իր շլացուցիչ փայլով ստեղծել է բազում նախապաշարմունքներ իր գոյութեան շուրջը. Նախապաշարմունքների անթիւ շերտերը գոլորշիացրել են բուրգի հիմնական գաղափարը... Եւ մարդու այդ բիրտ ու վայրագ դաստակերտը՝ կորցնելով իր հարազատութիւնը, մոռացնելով իր ծագման սկզբնաղբիւրը՝ դարձրել ու հռչակել է ինքն իրան արգասիք գերբնական զօրութեան, արգասիք՝ աստուածային գերագոյն, սրբազան կամքի... Եւ սակայն աս-

տուածային ու գերբնական՝ բուրգերի վերին կողմնանիստները իրանց գագաթնակէտով. Ներքինն ու ստորինը—կրաւորական տարրեր... Կեղծութեան ու փարիսեցիութեան ծնունդ գաղափարներ... Վերինի ճիգն է՝ տառապող մարդկութեան ճակատագրի երասանակները իր ձեռքում ամուր բռնելը, սեփական երջանկութեան, սեփական բարօրութեան սկզբունքը մարդկային զանգուածի թշուառութեան ու ապերջանկութեան վրայ զօրեղապէս ամրապնդելը։ Այսպիսով և տիրապետող է դառնում սկզբունքը՝ շատերը մէկի համար և մէկը իրան համար։ Սօցիալական արդարութեան անողոք հակոտնեան. մէկի երջանկութիւնը ամբողջովին հիմնուած բազմութեան դժբախտութեան վրայ, մէկի ձգտման ճանապարհը՝ փռուած շատերի դիակներով...

Եւ հասարակական կեանքի՝ սոսկ իր երկրային, աշխարհային բնութեամբ՝ զօրեղագոյն հակասութիւնները չէին կարող չունենալ շփման կէտեր, ուժեղ ընդհարումներ, իբրև արգասիք՝ ցասման հուժկու ժայթքումների։ Սօցիալական անարդարութեան դէմ այդօրինակ յախուռն բողոքները չէին կարող չանդրադառնալ դժգոհ տարրերի գաղափարական արտայայտիչների ուղեղում։ Եւ սինտետիստ հանճարները, մտքի զօրեղ տիտանները տարիներով տքնել են մարդկային կեանքի կնճռոտ պրօբլէմների լուծման շուրջը։ Այդպիսիներից ոմանք մարդկային ազգի փրկութիւնը որոնում էին նոյն աշխարհային կեանքի մէջ, սակայն ոմանք էլ յուսահատվելով անուղղելի կեանքից՝ դիմում վերացականութեանը։

Արդ վերջիններից՝ իբրև մտքի զօրեղագոյն տիտան հանդէս եկաւ նաև ռուսական դէմօսի, գլխաւորապէս գիւղացիական հուժկու տարրի կօսմօպօլիտ արտայայտիչ՝ Լէվ Նիկօլաեվիչ Տօլստօյը։

Հոգեկան խորունկ տրագիզմ կրող այն մտորումները, որոնք տարիներ շարունակ տանջել ու մաշել են Տօլստօյի ուղեղը, հասցրել են նրան.ի վերջոյ համամարդկային խղճմտանքի ու ընդհանուր սիրոյ դօգմատիկ սկզբունքներին։ Սակայն մտատանջութիւնների, անվերջ մտորումների այն ուղիները, որոնցով նա հասել է այդ սկզբունքներին և որոնց նկարագրութիւնը մենք գտնում ենք նրա «Խոստովանութիւն» գրքում, որի հայերէն թարգմանութիւնը այսու տալիս ենք հայ ընթերցողներին, պարզապէս երևան է հանում Տօլստօյի փիլիսօփայական խոկմանը ենթակայ երկու պրօբլէմ. մէկը՝ համաշխարհային, միւսը՝ տիեզերական. և մէկը միւսի աղբիւրն է. առա-

*ջինը պատճառ, երկրորդը՝ հետևանք։*

*Տօլստոյը իր ներքին կասկածների ու երերումների բուռն տարափի տակ՝ իբրև «կեանքի հարցեր» հրապարակ է նետում մարդուն յատուկ տառապանքի և ապա մահուան պրօբլէմները։ Տառապանքը մարդուն ուղեկցում է ծնուած օրից մինչև կեանքի վերջին վայրկեանը, ապա նետում նրան մի յաւիտենականութեան գիրկը, որի ո՛չ սկիզբն է ըմբռնելի և ո՛չ վախճանը։ Տառապանքը զուտ աշխարհային է, այսինքն կապուած՝ մարդու անհատական կեանքի հետ. մինչդեռ մահուան պրօբլէմի լուծումը կրում է տիեզերական բնոյթ, որով և նա որոշակի պէտք է տարբերուի իբրև առեղծուած։*

*Թէպէտ որքան էլ ծեծուած լինի տիեզերական առեղծուածի մութ հարցը, նա տակաւին հեռու է ամփոփ ու շօշափելի լինելուց, այնուամենայնիւ Տօլստոյը մտքի բարձր թռիչքներով շօշափում է նրա մի քանի տարրերը...*

*Սակայն մարդկային կեանքի անվերջ տառապանքը, անվերջ թշուառութի՛ւնն է, որ դարեր շարունակ տանջել ու ըստրկացրել է նաև մարդկային ուղեղը... Ի՞նչպէս և ի՞նչ մտորումներով է մօտենում այս ծանրակշիռ հարցին Լ. Տօլստոյը, ահա ծանրութեան այն կենտրօնը, որի մասին ապրումների մի առանձին թափով պատմում է նա իր նշանաւոր «Խոստովանութեան» մէջ։ Թէև Տօլստոյի այդ գրուածքը ըստ ձևի կրում է սուբիեկտիվ բնաւորութիւն, սակայն նրա անհատական վերապրումները անպայման պէտք է համարել յատուկ բոլոր մարդկանց։ Իբրև հանճար նա տարրալուծել էր իր մէջ բազմաթիւ անհատներ... Կեանքի և մահուան ճշմարտութիւնները որոնելիս Տօլստոյը վերապրել է ծայրայեղօրէն յուսահատ վայրկեաններ։ «Նոյն իսկ,—ասում է նա իր «Խոստովանութեան» մէջ,—ես անկարող էի ցանկալ ճշմարտութիւնը իմանալու, որովհետև գուշակում էի, թէ ինչո՛ւմ պիտի կայանայ այն։ Ճշմարտութիւնը այն էր, որ կեանքը անմտութիւն է։ Ես կարծես ապրել եմ ու ապրել, գնացել եմ ու գնացել և ապա եկել հասել անդունդին. պարզօրէն տեսնում էի, որ առջևս ոչինչ չը կայ՝ բացի կորստից։ Եւ կանգ առնել չէ կարելի, և յետ գնալ, և աչքերը փակել չէ կարելի՝ չտեսնելու համար որ առաջդ* ոչինչ չկայ, բացի տառապանքներից ու իսկական մահից—կատարեալ ոչնչացումից»։ *Ճշմարտութիւնը իմանալու համար նա դիմում է գիտութեանը, դիմում է պրօգրէսին, սակայն բաւարար պատասխան նա չէ ստանում։ Նրա ուղեղը մաշում է այն հարցը, թէ մարդուն տրուած է կեանքի*

մի այնպիսի իմաստ, որով նա կապուած լինէր տիեզերքի հետ ոչ միայն իր գոյութեամբ ժամանակի և տարածութեան մէջ, այլ և յաւիտենականութեան մէջ: Մարդկային կեանքի տանջալից կերպարանքը իր բուժումը, ըստ Տօլստոյի, չէր կարող գտնել համաշխարհային տառապանքի իրական ոչնչացմամբ ժամանակի և տարածութեան մէջ: Պրօգրէսը, առաջադիմութիւնը Տօլստոյի համար պալլիատիվ տարր էր. Նրա երկու ողբերգական դէպքերի ականատես լինելը—Պարիզում մահուան պատիժը, իսկ այստեղ իր խելացի, բարի և երիտասարդ եղբօր տանջալից, դանդաղ մահացումը—բաւական էր, որ պրօգրէսը Նրա համար դառնար Նախապաշարմունք:

Դէպի անվերջ տառապող դէմօսը մի առանձին սէր ունենալով, գրեթէ ձուլուելով Նրա հետ, Լ. Տօլստոյը ամբողջ էութեամբ տարուեց վերջինիս փրկութեան գաղափարով: Ժխտելով պրօգրէսի դրական դերը մարդկային ընդհանուր ազատագրման տեսակէտից, Նա ժխտում էր և գիտութեան դերը, ընդունելով, սակայն, որ գիտութիւնը ունի իր յատուկ հարցերն ու պատասխանները, բայց կեանքի խնդիրների վերաբերութեամբ Նա լուռ է և անպատասխան: Պրօգրէսս, գիտութիւն, գեղարուեստ—սրանք շատ շուտով յայտարարուեցին անբաւարար ու կեանքի հարցի հետ ոչ մի առնչութիւն չունեցող, ուստի և մնում էր Տօլստոյին դիմել կրօնին՝ զտուած ամեն Նախապաշարումից և աւելորդ բալլաստից՝ և այնտեղ որոնել բացատրութիւն՝ մարդկային անհատական կեանքը յաւիտենականութեան հետ կապող սկզբունքի մէջ...

Սակայն կրօնական ձևակերպումներով հնարաւո՞ր էր փրկել մարդկային կեանքը Ներքին կրակոտ հակասութիւններից, որոնք պատմական անհրաժեշտութեամբ դանդաղօրէն զարգանում են ու քարշ տալիս իրանց հետ և՛ պրօգրէսը, և՛ գիտութիւնը, և՛ գեղարուեստը, և՛ Նոյն ինքն կրօնը... Հնարաւո՞ր է երբևիցէ կրօնական ձևակերպումներով հանգցնել դասակարգային անտագօնիզմը, կռիւը: Կարելի՞ է սրտի և զգացմունքի թելադրանքներով դադար տալ այն վայրագութիւններին, որոնք այդ պայքարի մէջ ծնվում ու սնվում են շահագործման ու բռնութեան սկզբունքներով: Տօլստոյը մի առանձին հակումն չէր ցոյց տալիս զբաղվելու սօցիալական և պատմական այդ խնդիրների քննութեամբ և վերլուծութեամբ: Միտքն ու խելքը Նա բաւական չէր համարում լուծելու կեանքի հարցերը. դրանց լուծման գործում առաջնակարգ դերը սրտին և զգացմունքին էր պատկանում: Եւ երբ Նա շրջապատող իրականութեան այ-

լանդակ կերպարանքի բուժումը որոնում էր կրօնական դաւանանքի մէջ, ապա անշուշտ տրամաբանական հետեւողականութեամբ պիտի կանգ առնէր անհատի ինքնակատարելագործութեան սկզբունքի վրայ. ճիշտ այնպէս, ինչպէս արել էին Բուդդան, Կօնֆուցիոսն ու Քրիստոսը։ Մեծ էին այդ մարդիկ, նոյն և Տօլստօյը, իբրև մարդկութեան խղճմտանքի մաքուր տիպարներ. սակայն նրանց վարդապետութեան խոշոր մինուսը այն էր, որ նրանց այդ ուսմունքը չէր պարունակում իր մէջ գործնականութեան տարրը։ Ժխտել կուլտուրան, ժխտել գիտութիւնը, ժխտել գեղարուեստը, ժխտել վերջապէս այն ամենը, ինչ որ այժմ գոյութիւն ունի մեր բռնութեան ու շահագործման դարերում, նշանակում է քարոզել ապագայ աղքատութեան և ողորմելիութեան ուսմունքը։ Ժխտել գեղարուեստն ու կուլտուրան՝ ըստ իս՝ նշանակում է ժխտել, ոչնչացնել այն զէնքը, որով հէնց Տօլստօյը Տօլստօյ դարձաւ, որի անտաշ քանքարի նրբացնող ու յղկող գործիքը, զէնքը եղաւ…

Սակայն ինչո՞ւ ժխտել այդ բոլորը։

«Հասարակ դանակը աւազակի ձեռքում ահաբեկման միջոց է, իսկ խիրուրգի ձեռքում՝ փրկարար»…,—ասել էինք մենք մի անգամ։ Կուլտուրան, գիտութիւնն ու գեղարուեստը, ինչպէս և մարդկային զանգուածի ստուար մասը բռնութեան շղթաների մէջ են. կը գայ ժամանակ և վերջինիս հետ կազատագրուի նաև գիտութիւնը։ Եթէ բռնակալի և շահագործողի ձեռքում գիտութիւնը այսօր օժանդակ դեր է խաղում նրա համար. եթէ գեղարուեստը սեփականութիւն է սոսկ մեծատունների, նոյն շահագործողների. եթէ կեանքի ամեն բարիք, բժշկութիւն ու կուրօրտ, ցնծութիւն ու բերկրանք՝ ամեն ինչ ծառայում է այդ մեծատուններին, ապա դա յաւիտենական երևոյթ չէ. դա միայն խիրուրգի ձեռքում այն փրկարար դանակն է, որ տակաւին աւազակի ձեռքին է գտնվում…

Ինչպէս Բուդդայի, Կօնֆուցիոսի և Քրիստոսի, նոյն և Տօլստօյի ուսմունքը մեզ փոխադրում է մի այլ աշխարհ, որտեղից սպասում է մեր փրկութիւնը. մեր անհատական կեանքը՝ ժամանակի և տարածութեան մէջ ըմբռնելի՝ նրանք ճգնում են վերլուծել յաւիտենականութեան և անվախճանականութեան հետ շաղկապած։ Ուստի և այդ խոշոր ու լայնամիտ պրօբլէմի լուծման խնդիրը վերացրել էր նրանց՝ էական կեանքից։ Նրանք թողին մեր իրական յօշոտուած կեանքը, թողին ցաւ ու տառապանքների բուժումը իրական սպեղանիով ու դիմեցին վերացական կեանքի սաւառնումներին…

Ինչո՛ւ։ Կեանքը շատ շուտով յոռետես էր դարձրել նրանց...

Բնութեան անողոք հարուածները, որոնց առջև մարդը խղճուկ ու անպաշտպան էր, նրա անվերջ արհաւիրքները, որոնք անխղճօրէն խորտակում են նոյնիսկ մարդկութեան խոշորագոյն հատուածներ. իսկ ներքին հասարակական կեանքը՝ լի դառնութիւններով ու անբուժելի ցաւերով... Դաժա՜ն, մռայլ իրականութիւն։ Ո՞ւր գնալ, ո՛ր կողմը նետուել՝ փրկութիւն հայցելու. մարդկային հասարակական կեանքը՝ իր միանգամայն անմխիթար և անուղղելի վիճակով՝ մի սոսկալի, տաժանելի ժխոր է, մի խաւար ու մռայլ ստորերկրեայ անդունդ անձաւ։ Չկայ ելք, չկայ փրկութիւն, չկայ և յոյս։

Ո՞ւր գնալ. ի՞նչ անել։

Եւ կեանքից յուսահատուողները, նրա վերածնութեան վրայ յոռետեսութեամբ նայողները բնականաբար իրանց յոյսն ու հայեացքը պիտի հեռացնէին կեանքի իրականութիւնից դուրս։

Յոռետես էր Տօլստոյը, երբ նա որոնում էր տեղ՝ փրկութեան խարիսխը գցելու համար։ Երկար ժամանակ չգտնելով սակայն այդ յենակէտը, նա քանիցս վճռում է վերջ տալ աննպատակ կեանքին անձնասպանութեամբ։ Բայց բանականութիւնը, որ շարունակ կռիւ էր մղում նրա սրտի և զգացմունքի թելադրանքների դէմ, ի վերջոյ փրկեց նրան այդ անհետեւանք, անօգուտ վճռից։ Եւ որովհետև Տօլստոյը պրօգրէսսի, գիտութեան, սօցիալական, տնտեսական կեանքի ձևափոխութիւններին չէր հաւատում, ուստի և նա իր փրկութեան խարիսխը նետեց միստիք մտորումների ու վերացական մտքերի կենտրօնը, որտեղ անբացատրելի ու անորոշ յենարանների վրայ բազմել էր Աստուծու գաղափարը...

Եւ յոռետես Տօլստոյը վերածնուեց. նա գտաւ Աստուծուն, որը իբրև վեհագոյն ոյժ՝ միմիայն հնար ունի ազատագրելու մարդկութիւնը թշուառ ու նողկալի պայմաններից։ Անհատը ինքը պիտի փրկէ իրան՝ աստուածային սկզբունքը իր մէջ արտայայտելով։

—Ի՞նչ եմ ես. ինչո՛ւ եմ ապրում. ի՞նչ կապ՝ իմ և տիեզերքի միջև։ Ի՞նչ նպատակ յաւիտենականութիւնից իմ գալու և կարճ ժամանակից յետոյ կրկին նրա խոր ծոցը ընկղմուելու մէջ,—անընդհատ կրկնում է Տօլստոյը խորին մտատանջութեամբ։

Հարցեր՝ տագնապալից ու տանջող, որոնք կրկին շօշափում են տիեզերական առեղծուածի տարրերը, շաղկապուած

անհատական կեանքին որեւէ իմաստ հաղորդելու հետ։ Մարդկային կեանքի սոցիալական անարդարութիւնների դէմ իր հուժկու բողոքը հնչեցնելուց և հասարակական «բուրգերի» գոյութեան սկզբունքը երերուն յայտարարելուց յետոյ (այդ տեսակէտից Տոլստոյը իրաւամբ անիշխանական է), նա իր հայեացքը ուղղում է կեանքի նպատակի (ոչ վախճանական) հարցը լուծելու խնդրին, կրկին և կրկին ընկնելով ուղեղը այրող մտորումների հակասական ժխորի մէջ։ Եւ վերացական՝ իր համար մատչելի՝ եթերում երկար մտատանջութիւններից յետոյ Տոլստոյը լուծեց սեփական բանականութեան առջև այն սկզբունքը, որով ինքն իրան շաղկապում էր յաւիտենականութեան հետ, իբրև անբաժան տարր տիեզերական կեանքի, որ բարձրագոյն ու բացարձակ ճշմարտութեան — Աստուծու—կամքը կատարելու նպատակով յաւիտենականից գալիս է լոյս աշխարհ, ապա կրկին անցնում գնում նոյն տեղը…

«Միակ իմաստը, որ իր մահկանացու լինելը չմոռացող մարդը կարող է հաղորդել կեանքին, դա այն է, որ նա ինքնուրոյն էակ չէ, այլ սոսկ Աստուծու կամքի գործիքը»։

Եւ քանի որ մարդկային կեանքը մի ժամանակաւոր երևոյթ է՝ ժամանակով ու տարածութեամբ անվախճան տիեզերքում, ուստի և կարիք չկայ մարդուն առանձնապէս կենտրոնանալու այս անցաւոր աշխարհի կեանքի կարգաւորման մասին։ «Եթէ դա այդպէս է,—ասում է Տոլստոյը,—ապա ակնյայտնի է, որ սեփական կեանքի կարգաւորման համար ապրելը խենթութիւն է»…

«…Տիեզերքի մէջ մարդու իր կացութիւնը պարզ ըմբռնելումն է, որ բացվում է նրա առջև ճշմարիտ հաւատքը դէպի Աստուած և Նրա օրէնքը։ Իր կացութեան այս գիտակցութիւնից ըստ ինքեան բղխում է՝ հնազանդութիւն Աստուծու կամքին, բոլոր մարդկանց հաւասարութիւնը ճանաչելը, սիրելն ու ծառայելը նրանց, նոյնպէս և կեանքի հիմնական օրէնքները. անել ուրիշին այն, ինչ որ կը ցանկաս որ քեզ անեն»։

Այնուամենայնիւ նրա համար կայ մի նպատակ, որ իրագործել է պէտք հէնց այս անցաւոր կեանքում. և դա, ըստ Տոլստոյի, անհատի ներքին կատարելագործման արգասիքը կը լինի, անկախ՝ կեանքի արտաքին միջավայրի այս կամ այն բնոյթից. այդ նպատակը՝ «ինձ համար մատչելի նպատակը՝ համայն աշխարհի երջանկութիւնն է…»։ Այստեղ անհրաժեշտօրէն շեշտում է ի նկատի ունենալ քրիստոնէական հինգ պատուիրաններն ևս. մի բարկանայ, մարմնական ցանկութիւնների

անձնատուր մի՛ լինի, մի՛ երդուիր, բռնութիւն գործ մի՛ դնիր և սիրի՛ր թշնամիներիդ և այլն, և այլն, և այլն…

Սակայն ի՞նչ։

Յօշոտուած, արիւնաքամ մարդը կեանքի մռայլ, հիւծող պայմաններում երբէք չի դարմանուի բարոյական ինքնակատարելագործութեան փորձով. յօշոտուածը յօշոտուած կը մնայ, կեանքն ու պայմանները՝ մռայլ ու դաժան։ Մութ տանջարանների, գետնափոր բանտերի, քարէ տոպրակների ու կախաղանների խորտակումը կրօնական ձևակերպումների և անհատի բարոյական ինքնակատարելագործութեան գործը չէ, այլ կենսունակ ոյժերի անընդհատ, ակտիվ գործունէութեան՝ կեանքի համապատասխան պայմաններում։ Դաժան, սպանիչ, հեղձուցիչ մթնոլորտում շօշափելի օդ, թարմացուցիչ թթուածին կուզեն. փիլիսոփայական հառաչանքը այդ պարագայում ոչ թէ թարմացուցիչ, այլ միմիայն թմրեցուցիչ կը լինի…

Հնարաւո՞ր է վէրքը բժշկել աղօթքներով ու աղերսանքներով, երբ նրա բորբոքուած, պալարուած կերպարանքը նիւթական սպեղանի է պահանջում։ Նոյնը չէ՞ միթէ սօցիալական օրգանիզմի ցաւ ու տառապանքը, խեղդիչ, ապականիչ կերպարանքը, որ դառնացնում է մարդու օրն ու արևը։

Ո՞ւր է այն վերին արդարութիւնը, այն անծայրածիր սիրող էակը, ամենատես ու ամենակարող նախախնամութիւնը, որը իբրև այդպիսին (տրամաբանօրէն դատելով) շօշափելի կերպով արտայայտէր իր գոյութիւնը։ Կեանքի գարշապարը լիզող, իրականութեան նողկալի յատակում սողոսկող մարդկային ստորին զանգուածի դառնակոծ վայնասունն ու հառաչանքը, արիւն ու արցունքի շաղագունուած մթնոլորտում սգաւոր մայրերի, անօգնական որբերի ողբն ու լացը յաճախ և յաճախ մինչև երկինք է հասնում. երկինք է հասնում վայրագ կոտորածների զոհերի գանգերից ու ոսկորներից դիզուած սարսռալի բուրգը… Սակայն, աւա՜ղ… լսվո՞ւմ է արդարութիւն պահանջող կոծն ու հառաչանքը, դարմանվո՞ւմ է կեանքի նեխուած մրուրը քամող լքուածների վիրաւոր մարմինը… Օ՜, մա՛րդ, մա՛րդ, վերացական եթերում դու խղճուկ մարդ, որ՝ ստեղծելով քո վերացական Աստուծուն՝ դու քո ամբողջ էութեամբ ձգտում ես նրան անմատչելի եթերում պահել, որպէս զի շօշափելի իրականութեան մէջ դու նրան չարաչար կերպով չը տապալե՛ս…

Տիեզերական առեղծուածի լուծման պրօցէսը ամենից առաջ պիտի ունենայ մի կարևոր էտապ. դա այն է, որ մենք

Նախ պէտք է ամոքենք մեր լքուած մարմինը, ապա իրական կեանքի բարձր ձեւերի ներդաշնակ հնչիւններով ձգտենք լուծելու վախճանականի և անվախճանականի, այլ և ժամանակաւորի և յաւիտենականութեան յարաբերականութիւնը, ձգտենք լուծելու վերջապէս տիեզերական բարդ առեղծուածը...

«Ես վատ և անմիտ կերպով ապրեցի, այնպէս՝ ինչպէս բոլորը. բայց յետոյ՝ գրեթէ երեսուն տարի սրանից առաջ պարզուեց իմ առջև ճշմարտութիւնը, և այն օրից իմ կեանքը փոխուեց, դարձաւ խաղաղ, երջանիկ, ուրախ, և քանի գնում, քանի նա մօտենում է մահուան, այնքան լաւանում»։

Չպէտք է մոռանալ, որ այս տողերը Տօլստօյը գրել է 1905 թուին։ Թէ որքան խաղաղ, երջանիկ և ուրախ է եղել նրա կեանքը, այդ սակայն երևան եկաւ 1910 թուին, երբ ութսունըերկուամեայ փիլիսօփան՝ ձմերային մի սառնամանիք օր՝ թօթափեց իր ոտների փոշին Եասնայա Պօլեանայում և մի առանձին տենդով հեռացաւ, գնաց «խաղաղ ու երջանիկ» համարուած կեանքից...

Ինչո՞ւ գնաց. երևի, դառն էր այն կեանքը, որ նա համարել էր դրական ու օրինակելի։

Թւում է, սակայն, որ ծերունազարդ հանճարը ո՛չ թէ հեռացաւ իր կեանքին նոր իմաստ հաղորդելու նպատակով, ո՛չ, այլ՝ կեանքի նկատմամբ առհասարակ իր ստեղծած իմաստի համապատասխան իր կեանքը նորոգելու համար...

Վերացական էակի նկատմամբ իր ձևակերպումները դարձան նրա համար պատգամներ. պէտք է բաժանուէր կեանքից, քանի որ նա իր անձը կապել էր Աստուծու գաղափարին, ձուլուելով նրա հետ... «Աստուած՝ դա անսահմանն է այն ամենի, ինչ որ ես իմ մէջ գտնում եմ սահմանափակ. ես՝ մարմին եմ սահմանափակ, Աստուած՝ մարմին է անսահման. ես՝ էակ եմ 63 տարի ապրող, Աստուած՝ էակ է յաւիտեան ապրող. ես՝ էակ եմ իմ ըմբռնողութեան սահմաններում մտածող, Աստուած՝ էակ է անեզր մտածող. ես՝ էակ եմ երբեմն մի փոքր սիրող, Աստուած՝ էակ է անծայրածիր սիրող։ Ես՝ մասն եմ, Նա՝ ամբողջ։ Ես ինձ չեմ կարող այլ կերպ ըմբռնել, քան՝ ուպէս Նրա մասը»։

Ըստ որում՝ Աստուած մարդու սոսկալի հակադրութիւնն է... մարդը սահմանափակ, Աստուած՝ անսահման. և երբ սահմանափակ մարդը իր աւազակատիկի մեծութեան արդարասիրութեամբ կարող է գգալի գթասրտութեան օրինակը ցոյց տալ, Աստուած, որ անսահման է այդ պարագայում ևս, անարդարութիւնը անշուշտ պէտք է անմիջապէս ջնջէր երկրի երեսից...

Եւ Տօլստոյը մահուան գաղափարը ոչնչացնելու համար գտաւ այն Աստուծուն, որի հետ շաղկապելով իր ժամանակաւոր անձը՝ դարձաւ յաւիտենական։ Այդպէս՝ ըստ ամենայնի շօշափելով տիեզերական առեղծուածի որոշ տարրը միայն, նա կանգ առաւ այնտեղ, որտեղ ստիպուած եղաւ խոստովանել. «...Վախճանական նպատակի նկատմամբ ես ոչինչ իմանալ չեմ կարող...»։

Եւ այդպէս՝ որքան էլ սակայն գործնականութեան տարրից զուրկ լինեն Բուդդայի, Կոնֆուցիոսի, Քրիստոսի, նոյն և Տօլստոյի վարդապետութեան հիմնական գաղափարները, այնուամենայնիւ մեծ են նրանք. մեծ է և Տօլստոյը սոցիալական արդարութեան ջերմագին քարոզով, մեծ է՝ ճշմարտութեան անընդհատ որոնումով, մաքուր ու անկեղծ եղբայրսիրութեան, հաւասարութեան դաւանանքներով, մեծ է համամարդկային խղճմտանքի մարմնացման իր վեհ պատկերով...

ՍՈՒՐԽԱԹԵԱՆ

Թիֆլիս, 8 յունուարի 1911 թ.

---

# Խ Ո Ս Տ Ո Վ Ա Ն Ո Ւ Թ Ի Ւ Ն

## I

Ես մկրտուել ու դաստիարակուել եմ քրիստոնէական ուղղափառ դաւանանքով։ Ինձ սովորեցնում էին այն՝ իմ մանկութեան ու պատանեկութեան ամբողջ շրջանում։ Սակայն երբ տասնևութամեայ հասակումս դուրս եկայ համալսարանի երկրորդ կուրսից՝ ես այլևս չէի հաւատում և ոչ մի բանի այն ամենից, ինչ որ ինձ սովորեցրել էին։

Դատելով մի քանի յիշողութիւններով՝ ես լրջօրէն երբէք էլ չեմ հաւատացել, այլ միայն հաւատ եմ ունեցել դէպի այն,

ինչ սովորեցնում էին ինձ և որը իմ առջև դաւանում էին մեծերը. սակայն այդ հաւատը եղել է չափազանց խախուտ։

Յիշում եմ, երբ ես մօտ տասնմէկ տարեկան էի, ինչպէս գիմնազիայում սովորող մի երեխայ, Վօլօդենկա Մ. ն, որը վաղուց վախճանուած է, գալով մեզ մօտ մի կիրակի օր՝ իբրև վերջին նորութիւն՝ յայտնեց բոլորիս գիմնազիօնում արուած մի գիւտի մասին։ Գիւտը կայանում էր նրանում, որ Աստուած չկար, և այն ամենը՝ ինչ որ մեզ սովորեցնում են՝ հնարովի բաներ են (դա տեղի ունեցաւ 1838 թուին)։ Յիշում եմ, թէ ինչպէս իմ մեծ եղբայրները հետաքրքրուեցին այդ նորութեամբ, կանչեցին ինձ խորհրդի, և մենք բոլորս, յիշում եմ, խիստ կենդանացանք և այդ լուրը ընդունեցինք որպէս մի շատ ուշագրաւ և չափազանց նշանաւոր բան։

Յիշում եմ նոյնպէս, թէ ինչպէս՝ երբ իմ մեծ եղբայր Դիմիտրին համալսարանում եղած ժամանակ յանկարծ իրան յատուկ խանդոտութեամբ անձնատուր եղաւ կրօնին ու սկսեց յաճախել բոլոր ժամերգութիւններին, պաս պահել, վարելով մաքուր ու բարոյական կեանք, մենք բոլորս, նոյն իսկ մեծերը, անդադար ծաղրի էինք ենթարկում նրան և, չգիտեմ ինչու, անունը դրել էինք Նոյ։

Յիշում եմ, Կազանի համալսարանի այն ժամանակուայ հոգաբարձու Մուսին-Պուշկինը, որը մեզ իր մօտ պարելու էր հրաւիրում, վերջինից հրաժարուող եղբօրս համոզում էր նրանով, որ Դաւիթն էլ պարելիս է եղել տապանի առջև։ Ես այն ժամանակ համակրում էի մեծերի այդ կատակներին և դրանցից եզրակացնում էի, որ վարդապետարանը սովորել պէտք է, եկեղեցի գնալ պէտք է, սակայն այդ բոլորը լուրջ ընդունել պէտք չէ։ Յիշում եմ նոյնպէս, որ Վօլտերին ես կարդացել եմ շատ երիտասարդ հասակումս, որի ծաղրանքները ոչ միայն ինձ չէին վրդովում, այլ և չափազանց զուարճացնում էին։

Իմ հրաժարումը դաւանանքից տեղի ունեցաւ իմ մէջ այն ձևով, որով կատարվում էր և այժմ էլ է կատարվում մեր կրթութեան աստիճանի մարդկանց մէջ։ Իմ կարծիքով, դա մեծ մասամբ տեղի է ունենում հետևեալ կերպով. մարդիկ ապրում են այնպէս, ինչպէս բոլորն են ապրում, իսկ բոլորը ապրում են այն սկզբունքների հիման վրայ, որոնք ո՛չ միայն ընդհանուր ոչինչ չունեն դաւանաբանութեան հետ, այլ և մեծ մասամբ հակադիր են նրան։ Դաւանաբանութիւնը կեանքի մէջ գործօն մասնակցութիւն չունի, և ուրիշ մարդկանց հետ ունեցած յարաբերութիւնների ժամանակ նրան բաղխուելու և հէնց

անձնական կեանքում երբէք հաշուի առնելու կարիք չէ լինում։ Այդ դաւանաբանութիւնը դաւանվում է ինչ-որ մի տեղ, կեանքից հեռու, նրանից անկախ։ Եթէ բաղխվում էլ ես նրա հետ, ապա բաղխվում ես սոսկ իբրև մի արտաքին, կեանքի հետ ոչնչով չկապակցուած երևոյթի հետ։

Մարդու կեանքից կամ նրա գործերից, ինչպէս այժմ,



Լ. Ն. ՏՈԼՍՏՈՅ

այնպէս էլ այն ժամանակ, անհնարին է իմանալ՝ հաւատացո՞ղ է նա թէ՞ ոչ։ Թէկուզ եթէ լինի էլ որևէ տարբերութիւն ուղղափառութիւնը բացարձակ դաւանողի և ժխտողի միջև, այնուամենայնիւ դա յօգուտ առաջինի չէ։ Ինչպէս այժմ, այնպէս էլ այն ժամանակ՝ բացարձակօրէն ուղղափառութիւն ճանաչելն ու դաւանելը յատուկ էր գլխաւորապէս այն մարդկանց, որոնք բութ են ու դաժան և իրանք իրանց սակայն խիստ նշանաւոր համարող։ Իսկ խելքը, ազնւութիւնը, շիտակութիւնը, բարեմտութիւնն ու բարոյականութիւնը երևում էին մեծ մասամբ

այն մարդկանց մէջ, որոնք իրանց համարում էին չհաւատացող։

Դպրոցներում սովորեցնում են վարդապետարան և աշակերտներին ուղարկում եկեղեցի. պաշտօնեաներից պահանջում են հաղորդման վկայականներ։ Սակայն մեր շրջանի մարդը, որը այլևս չէ սովորում ու պետական ծառայութեան մէջ չէ գտնվում, հէնց այժմ էլ—իսկ հնումը առաւել ևս—կարող է տասնեակ տարիներ ապրել առանց երբէք յիշելու, որ նա գտնվում է քրիստոնեաների մէջ և ինքն ևս համարվում քրիստոնէական ուղղափառ հաւատը դաւանող։ Ըստ որում ինչպէս այժմ, այնպէս էլ առաջ հաւատարմութեամբ ընդունուած և արտաքին ճնշումով պահպանուած դաւանաբանութիւնը աստիճանաբար հալվում է գիտութեան ազդեցութեան և կեանքի փորձերի ներքոյ, որոնք դաւանաբանութեանը հակադիր են. և մարդ շատ յաճախ ապրում է, երևակայելով թէ նրա մէջ իբր ամբողջացուած մնում է այն դաւանանքը, որը նրան հաղորդել են մանկութիւնից, մինչդեռ վաղուց արդէն նրա հետքն անգամ չէ մնացել։

Ինձ Ս.-ն՝ մի խելացի և շիտակ մարդ՝ պատմում էր, թէ ինչպէս նա հաւատալուց դադարել է։ Քսանևվեցամեայ հասակում մի անգամ նա, որսորդութեան ժամանակ, քնելուց առաջ երեկոյեան՝ մանկութիւնից մնացած ըստ հին սովորութեան՝ կանգնում է աղօթքի։ Նրա հետ որսի դուրս եկած մեծ եղբայրը խոտերի վրայ պառկած դիտելիս է եղել եղբօրը։ Երբ Ս.-ն աւարտում է աղօթքն ու պառկում՝ եղբայրը նրան ասում է. «Եւ դու դեռ շարունակո՞ւմ ես անել այդ»։

Եւ նրանք էլ ոչինչ չխօսեցին իրար հետ։ Այն օրից Ս.-ն դադարում է աղօթելուց և եկեղեցի գնալուց։ Եւ ահա երեսուն տարի է, որ ո՛չ աղօթում է, ո՛չ հաղորդվում և ո՛չ էլ եկեղեցի յաճախում։ Եւ դա ո՛չ այն պատճառով, որ իմանալով իր եղբօր համոզմունքները՝ նա միացաւ նրան, ո՛չ նրա համար, որ իր մտքում որևէ վճիռ կայացրեց, այլ սոսկ այն պատճառով, որ եղբօր խօսքերը մատի մի թեթև զարկ էին այն պարսպին, որը պատրաստ էր կործանուելու հէնց իր սեփական ծանրութիւնից։ Կարծես դա մի մատնանշութիւն լինէր այն հանգամանքի վրայ, որ այնտեղ, ուր նրա կարծիքով հաւատ կար, վաղուց արդէն դատարկ տեղ է մնացել. ուստի և այն բառերը, որ նա արտասանում է, այն խաչակնքումներն ու երկրպագութիւնները, որ նա անում է աղօթքի կանգնելիս, կատարելապէս անմիտ գործողութիւններ են։ Գիտակցելով դրանց անմտութիւնը՝ նա չէր կարող այլ ևս շարունակել այն։

*Իմ կարծիքով այդպէս է եղել և լինում մարդկանց մեծամասնութեան հետ։ Ես ասում եմ մեր կրթութեան տէր մարդկանց նկատմամբ, այն մարդկանց, որոնք շիտակ են իրանք իրանց հետ, և ոչ այն մարդկանց մասին, որոնք հաւատի առարկան դարձնում են միջոց՝ իրանց ժամանակաւոր նպատակներին հասնելու համար։ (Այդ մարդիկ ամենաարմատական չհաւատացողներն են, որովհետև երբ դաւանանքը նրանց համար միջոց է՝ կենցաղավարական որևէ նպատակների հասնելու համար, ապա դա անշուշտ այլ ևս հաւատք չէ)։ Մեր կրթութեան տէր այդ մարդիկ գտնվում են այն դրութեան մէջ, որով գիտութեան և կեանքի լոյսը արդէն վառել է արհեստական շէնքը, և նրանք կամ նշմարել են այն և տեղ բացել, կամ տակաւին չեն նշմարել։*

*Մանկութիւնից ինձ հաղորդուած դաւանաբանութիւնը անյայտացաւ իմ մէջ ևս այնպէս, ինչպէս ուրիշների մէջ, սակայն այն տարբերութեամբ, որ ես տասնեհինգամեայ հասակումս սկսեցի կարդալ փիլիսոփայական գրուածքներ, ուստի և իմ հրաժարումը դաւանանքից շատ վաղ դարձաւ գիտակցական։ Տասնվեցամեայ հասակումս ես դադարեցի աղօթելուց և՝ սեփական դրդմամբ՝ եկեղեցի յաճախելուց ու հաղորդուելուց։ Ես չէի հաւատում այն բանին, որը ինձ հաղորդել էին մանկութիւնից, բայց ես յամենայն դէպս հաւատում էի ինչ-որ մի բանի։ Բայց ի՛նչ բանի էի հաւատում՝ ես ո՛չ մի պարագայում ասել չէի կարող։ Հաւատում էի նաև Աստուծուն, կամ աւելի շուտ՝ Աստուծուն չէի ժխտում, սակայն ո՛րպիսի Աստուծուն՝ այդ ևս ասել չէի կարող։ Չէի ժխտում նաև Քրիստոսին և նրա ուսմունքը, սակայն ինչումն էր նրա ուսմունքը՝ այն ևս ասել չէի կարող։*

*Յիշելով այժմ այն ժամանակը, ես պարզօրէն տեսնում եմ, որ իմ հաւատքը, դաւանանքը — այն, որը բացի իմ կենդանական բնազդներից առաջ էր մղում իմ կեանքը — իմ միակ ճշմարիտ դաւանանքը այն ժամանակ՝ կատարելագործման դաւանանքն էր։ Սակայն ինչումն էր կայանում այդ կատարելագործումը և ինչ էր նրա նպատակը՝ ես չէի կարող ասել։ Ես ճգնում էի կատարելագործուել մտաւորապէս, ես սովորում էի ամեն բան, ինչ կարողանում էի և դէպի որը կեանքը ինքն էր ինձ դրդում. ես ճգնում էի կատարելագործել իմ կամքը, կազմում էի ինձ համար որոշ կանոններ, որոնց և աշխատում էի հետևել, կատարելագործում էի ինքս ինձ ֆիզիքապէս, ամեն տեսակ վարժութիւնների միջոցով զարգացնելով ոյժ ու*

ճարպիկութիւն և ամեն գրկանքներով ընտելացնում ինձ դիմացկունութեան և համբերութեան։ Եւ այս ամենը ես համարում էի կատարելագործումն։ Ամեն ինչի սկիզբը, ի հարկէ, բարոյական կատարելագործութիւնն էր, սակայն շուտով նա փոխուեց ընդհանուր կատարելագործութեան, այսինքն՝ փոխուեց ոչ թէ իմ կամ Աստուծու առջև առաւել լաւ լինելու ցանկութեան, այլ՝ ուրիշ մարդկանց առջև։ Եւ մարդկանց առջև լաւ լինելու ձգտումը շատ շուտով փոխուեց ուրիշներից աւելի ուժեղ, այսինքն ուրիշներից աւելի փառաւոր, նշանաւոր և աւելի հարուստ լինելու ցանկութեան։

(Կը շարունակուի)

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ

---

I. **Ռուսահայոց կեանքի շուրջը.**—*Մեր յետամնացութիւնը և հեթանոսութիւնը.—Անբարեխիղճ գործիչները.—Կաթողիկոսի մահը և նրա մարմնի շուրջը յարուցուած աղմուկը.—Կաթողիկոսական հարցը.—Սինոդի միջնորդութեան մերժումը.—Երեք տարբեր հոսանքներ կաթողիկոսական հարցում.—Դաշնակցական-Սպանդարական գործը.—Շիրվանզադէ-Լէօ գայթակղալից դէպքը.—Ժամհարեանների ձեռնարկութիւնը.—Ղուկասեան կտակը.—Տիկին Քանանեանի նուէրը։*

II. **Թիւրքահայոց կեանքի շուրջը.**—*Պատրիարքական ճգնաժամը և նրա լուծումը.—Երկու խմբակցութիւնների համաձայնութիւնը.—Տեղապահի ընտրութիւնը.—Պատրիարքական թեկնածուներ.—Օրմանեանի գործի քննիչ յանձնաժողովը և նրա տեղեկագիրը.—Ադանայի դէպքը։*

III. **Պարսկահայոց կեանքի շուրջը.**—*Ատրպատականի պատգամաւորական ժողովը.—Կենտրոնական դպրոցը.—Դէպքերը Ղարադաղում.—Պարսկա-Հնդկաստանի թեմը և թեմակալ առաջնորդը.—Հայերը մէջլիսում.—Յովհաննէս-խան Մասէհեան։*

## ՌՈՒՍԱՀԱՅ ԿԵԱՆՔ

### I

Քաղաքակրթուած ազգերի մէջ կեանքը այնքան ճոխ և բազմաբովանդակ է իր քաղաքական, սօցիալական, գիտական, գեղարուեստական, գրական և տնտեսական կողմերով, որ քըննադատն ու վերլուծողը յաճախ շուարած է մնում, թէ ինչպէս պարփակէ այդ կեանքի նկարագրութիւնը նոյն իսկ միամսեայ տեսութեան մէջ։ Եւ այդ է պատճառ, որ ոչ թէ միայն ընդհանուր գրական պարբերական հրատարակութիւնները, այլ և զուտ մասնագիտական հանդէսները այդ ազգերի մէջ ահագին տարածում և ընթերցողներ ունեն։

Հայկական ամսագրի կամ հանդէսի միամսեայ, նոյն իսկ երկամսեայ, եռամսեայ տեսութիւն կազմողը յաճախ կանգ է առնում ամայութեան առաջ կամ այն տխուր իրականութեան առաջ, որ աւելի շատ մռայլ, խաւար, անմխիթար երևոյթներ է տեսնում իր շուրջը, իսկ լուսաւոր, մխիթարական՝ շատ քիչ։ Քաղաքակրթուած ազգերի կեանքի մէջ եթէ պատահում են մռայլ երևոյթներ, բայց դրա փոխարէն լինում են և շատ լու-

սաւոր, պայծառ երևոյթներ, իսկ մեր հայոց կեանքի մէջ՝ լուսաւոր, պայծառ երևոյթները միայն հեռադիտակով պէտք է որոնել կամ ամենափոքրիկ լուսաւոր օազիսներ են կազմում լայնածաւալ մռայլ տարածութեան մէջ։

Կարող ենք ասել, որ բարոյականութեան շաւղի մէջ մենք հայերս աւելի զարգացած ենք այս XX դարում, որքան էին մեր նախահայրերը նախորդ դարերում։ Դժուար թէ գտնուի մինը, որ հաստատէ այդ։ Քրիստոնէութիւնը մեր մէջ մօտ 2000 տարի է քարոզվում է, բայց նրա սկզբունքների գործադրութիւնը մեր կեանքի մէջ, կարելի է ասել, դեռ նոյն իսկ չէ սկսուել։ Մենք անունով, արտաքին կեղևով ենք քրիստոնեայ, իսկ ներքուստ մնացել ենք հեթանոս, որովհետև այն, ինչ որ կազմում է քրիստոնէութեան էութիւնը, ծուծը, այն է՝ ընկերոջ, մերձաւորին սիրելը, ինչպէս իր սեպհական անձը, դեռ «ձայն բարբառոյ յանապատի» է մնացել մեր մէջ։ Եւ ոչ միայն մենք ընկերոջ և իրար չենք սիրում, այլ իրար դէմ զինվում ենք, պատրաստ ենք իրար ջարդելու, ոտնակոխ անելու, ջնջելու։ Ատելութիւնը, հեռը, թշնամութիւնը մեր կեանքի նշանաբանն են կազմում։ Կուսակցութիւնները, որոնք քաղաքակրթուած և լուսաւոր ազգերի մէջ նպաստում են միայն և միայն ընդհանուր առաջադիմութեան, զարգացման, ազգի ընդհանուր կուլտուրային, կռելով և կոփելով եռանդուն, տոկուն, անձնուէր գործիչներ, մեր մէջ՝ ընդհակառակը՝ դարձել են եղբայրասպան կռիւների, բաժանումների, ոյժերի ջլատման, բարոյական և մտաւոր քայքայման աղբիւրներ։ Մեր մէջ գաղափարական հակառակորդին աշխատում են լռեցնել, զինաթափ անել ոչ թէ համոզմունքով, փաստերով, այլ գաւազանով, մտրակով, տէրրորով և անձնական անուանարկութեամբ։

Մեռաւ Ամենայն Հայոց Կաթողիկոս Մատթէոս II, և դեռ մարմինը հողին չէր յանձնուած, ահա հանդէս եկան մարդիկ և որոշեցին շահագործել մեծ ննջեցեալի անունը իրանց նեղ կուսակցական շահերի համար։ Եւ այդ անպատկառ, անբարեխիղճ ակտը կատարողը գրականութեան և մամուլի մէջ գործող անձինք էին, գրչի տէր մարդիկ, որոնք իրանց արշաւանքի և շահատակութեան առարկայ ընտրեցին Երևանի փողոցներում պտտող լուրերը և՝ այդ լուրերը փոխադրելով մամուլի մէջ՝ ձգտեցին բարձրացնել աղմուկ, թէ Էջմիածնի եպիսկոպոսներից մինն է եղել պատճառ Կաթողիկոսի մահուան։ Եւ այդ միայն նրա համար, որ այդ եպիսկոպոսը համարվում էր մրցակից այն կանդիդատների, որոնց նրանք միտք ունէին առաջարկել իբրև

կաթողիկոսական ընտրելիներ։ Մի ուրիշ գրող, ծերունի, նոյն իսկ զառամեալ, արդէն մի ոտքը գերեզմանի մէջ, չխղճահարուեց Պուրիշկեվիչի դեր կատարել և մամուլի մէջ պօգրոմի կոչ կարդալ հայ ժողովրդին ընդդէմ Կաթողիկոսի կարծեցեալ սպանիչին, որպէս թէ հայոց կաթողիկոսի պատիւը պաշտպանելու նպատակով։ Եւ սակայն այդ ծերունի գրողը, Կաթողիկոսի պատուին պաշտպան կանգնողը, երբեմն, տարիներ առաջ, չէր քաշուել Ամենայն Հայոց Կաթողիկոսին որակել սոդոմական...։

Ի հարկէ, ճշմարտութիւնը չյամեց երեւան գալ. ի հարկէ, ստախօսները և պօգրոմիստները կոր և գլուխ մնացին, և այդ ամենը միայն առիթ եղաւ հասարակութեան համար քաջ ճանաչել անմաքուր գործիչներին, բայց դարձեալ բաժակի տակ մնաց դառնութիւն, մրուր, և Ամենայն Հայոց Կաթողիկոսի մահը, որ լցրեց հայ ժողովրդի սիրտը անկեղծ վշտով, լցրեց միևնոյն ժամանակ դառնութեամբ, թէ որքան դեռ վայրենի, կոպիտ, վայրագ բնազդներ և կրքեր կան մեր ազգի նոյն իսկ ընտրեալ համարուած մասի մէջ, երբ այդ կրքերը նոյն իսկ ննջեցեալին գերեզման չիջեցրած շահագործում են նրա անունը՝ իրանց անձնական միտումների համար։

## II

Մատթէոս Ա.ի անակնկալ մահը նորից հայ ժողովրդի առաջ դրեց կաթողիկոսական հարցը։

Պէտք է ընտրել յաջորդ Մատթէոս Բ Իզմիրլեանին։ Պէտք է ժողովրդի ձայնը և խիղճը հայոց եկեղեցուն տայ նոր պետ։

Բայց ահա այդ ձայնը և խիղճը անորոշութեան մէջ է։ Ո՞ւմ վրայ կանգ առնել։ «Բազում են կոչեցեալք և սակաւ ընտրեալք»։ Կանդիդատներ շատ կան, բայց այդ կանդիդատներից և ոչ մինը օժտուած չէ այն յատկութիւններով, ձիրքերով և բարեմասնութիւններով, որոնք կարողանային թելադրել հայ ժողովրդին և ասել՝ «ահա սա է ընտրեալը»։ Հետևաբար, պէտք է հաշտուել այն մտքի հետ, որ այս անգամ ընտրեալը չպէտք է լինի ընդհանուրի ընտրեալ, չպէտք է կոչուի կաթողիկոսութեան՝ ազգի և եկեղեցու միահամուռ ձայնով, այլ ընտրեալը պէտք է լինի այն եկեղեցականը, որ գոնէ մինիմալ չափերով օժտուած լինի այն յատկութիւններով, որոնք ներկայումս պահանջվում են ապագայ կաթողիկոսից։

Եւ որովհետև մինչև այսօր հասարակական կարծիքը մամուլի մէջ իբրև ընտրելիներ առաջարկել է հետևեալ եկեղեցա-

կաններին—Օրմանեան, Սուրէնեան, Պարգեան, Դուրեան արքեպիսկոպոսներին, Կարապետ, Մեսրոպ, Բաբկէն եպիսկոպոսներին և Բագրատ վարդապետին—հետևաբար, այդ եկեղեցականներից մինը և պէտք է ընտրուի Կաթողիկոս Ամենայն Հայոց։ Ասել, թէ այդ եկեղեցականներից որի՞ն պէտք է նախամեծարութիւն տալ և վերջնականապէս յանձնարարել ընտրողներին, մենք համարում ենք շատ վաղաժամ, որովհետև առաջին՝ հասարակական կարծիքը դեռ զօրեղ կերպով չէ արտայայտուել ոչ Ռուսաստանի, ոչ Թիւրքիայի, ոչ Պարսկաստանի և այլ հայաբնակ երկիրների հայերի մէջ այդ կանդիդատների վերաբերմամբ. երկրորդ՝ նրանց անցեալ գործունէութեան պատկերը լիակատար չէ ուրուագծուած և երրորդ՝ դեռ բաւական ժամանակ կայ քննելու, ուսումնասիրելու և եզրակացութիւններ անելու։

III

Այդ տեսակէտից՝ պէտք է ողջունել Կովկասի Փոխարքայի որոշումը, որով չէ յարգել Էջմիածնի սինոդի անտեղի և անյարմար միջնորդութիւնը՝ փութացնել կաթողիկոսական ընտրութիւնները նախ քան օրէնքով սահմանուած միամեայ ժամանակամիջոցի լրումը։ Այդ միջնորդութիւնը համարվում է արդիւնք սինոդի անդամ Մեսրոպ եպիսկոպոսի ձգտումների և այն նկատումների, թէ որքան քիչ ժամանակ տրուի հայ ժողովրդին մտածելու, այնքան լաւ։ Մենք, ընդհակառակը, մտածում ենք, որ աւելի լաւ կը լինի ընտրութիւնը նոյն իսկ յետաձգել և նշանակել միայն 1912 թ. գարնան։ Այդ յետաձգումը հակառակ չէ օրէնքին, որովհետև օրէնքով նոր կաթողիկոսի ընտրութիւն չէ կարող կայանալ մի տարուց առաջ, բայց մի տարուց յետոյ կարող է, և այդ մասին ոչ մի արգելք չկայ օրէնքի մէջ։ Եւ դրա ապացոյցն այն է, որ երբ 1882 թ. դեկտեմբերին վախճանուեց Գէորգ Դ. կաթողիկոսը, սինոդը նշանակեց նոր կաթողիկոսի ընտրութիւնը ոչ թէ 1883 թ. դեկտեմբերին, այլ 1884 թ. մայիսին, և ռուսաց կառավարութիւնը ոչ մի արգելք չգտաւ այդ որոշման դէմ։

IV

Այժմ հարց է ծագում, թէ ի՞նչ չափով հայ ժողովուրդը հետաքրքրվում է կաթողիկոսական ընտրութեան հարցով և արժէ՞, որ նա հետաքրքրուի բուռն կերպով։

Մենք չպէտք է թագցնենք այն ճշմարտութիւնը, որ ներկայումս, XX դարում, հայ ժողովրդի մէջ ևս առաջ է եկել մի մասն, որ կաթողիկոսական ընտրութեան հարցի վրայ

նայելով զուտ կրօնական տեսակէտից՝ քարոզում է, թէ այդ հարցով պէտք է զբաղուեն միայն հաւատացեալները։ Յայտնի է, որ այդպէս է և աշխարհիս բոլոր սօցիալ-դեմօկրատների կամ առհասարակ սօցիալիստների կարծիքը և համոզմունքը, և, բնականաբար, հայ սօցիալ-դեմօկրատները, իբրև համոզմունքի տէր անձինք, չպէտք է բացառութիւն կազմեն։ Սակայն մեր մէջ կան և այնպիսի անձինք, որոնք թէև իրանց սօցիալիստ կամ սօցիալ-դեմօկրատ են համարում, բայց կաթողիկոսական, եկեղեցական, առաջնորդական հարցերով աւելի են հետաքրքրվում, քան բուն հաւատացեալները։ Մեր կարծիքով, այդպիսի դիմակաւորեալ սօցիալիստների—որպիսիք հանդիսանում են մեր կեանքի մէջ դաշնակցականները—միջամտութիւնը կաթողիկոսական, եկեղեցական, առաջնորդական գործերի մէջ աւելի վնասակար է, քան իսկական սօցիալիստների միջամտութիւնը, որովհետև վերջինները կը գործէին ուղղակի, իբրև համարձակ և յայտնի հակառակորդներ, լոկ համոզմունքի թելադրութեամբ. սակայն դիմակաւորեալ սօցիալիստների միջամտութեան գլխաւոր նպատակն է՝ գործիք դարձնել կաթողիկոսին, առաջնորդներին, յաջորդներին և առ հասարակ եկեղեցին՝ իրանց նեղ կուսակցական շահերի իրագործման համար։ Նրանք հետամուտ են և լինելու են ոչ թէ եկեղեցու բարօրութիւնը, շահը պաշտպանելու, այլ ընտրել տալու մի այնպիսի կաթողիկոս, առաջնորդ, որ հլու հպատակ լինի իրանց կամ գործէ իրանց թելադրութեամբ։ Եւ այդ պատճառով նրանք աւելի վտանգաւոր են, քան կարող են լինել սօցիալիստները, որոնք չեն ընդունում ոչ եկեղեցի, ոչ կաթողիկոսական հարց։ Մնում են ուրեմն երկու մեծ տարրեր, որոնցից և կազմուած է հայ ժողովրդի մեծամասնութիւնը, այն է՝ առաջադիմական կամ ազգային-ազատամտական և յետադիմական կամ ազգային-պահպանողական-կղերական տարրերը, որոնք և պէտք է ներգործական դեր կատարեն և մասնակցութիւն ունենան կաթողիկոսական ընտրութեան մէջ։ Եւ որովհետև որևէ համաձայնութիւն, կօմպրօմիս այդ երկու տարրերի միջև անհնարին է թւում, քանի որ հայեացքների և համոզմունքների մէջ շատ մեծ տարբերութիւններ կան, ուստի կաթողիկոսական ընտրելիի վերաբերմամբ աւելի շատ դաշնակցականները և կղերական-պահպանողականները կարող են համաձայնուել, քան ազգային-ազատամտականները կամ առաջադիմականները պահպանողական բանակի հետ։ Պրեցեդենտներ այդ ուղղութեամբ արդէն ունենք։ Մենք յաճախ տեսել և տեսնում ենք, որ կօմպրօմիսներ կայացել են դաշնակցականների և

կղերականների միջև, որի հետևանքով՝ օրինակ՝ թունդ «Նոր-դարականներ» կամ պահպանողականներ ընտրուել են դիւանապետ, առաջնորդ, յաջորդ, հոգաբարձու և այլն։ Ամենևին զարմանալու չի լինի, եթէ, օրինակ, յանկարծ, մի Վահրամ եպիսկոպոս Մանկունի առաջարկուի իբրև կաթողիկոսացու և՛ դաշնակցականների, և՛ կղերականների կողմից. բաւական է, որ ընտրելին որևէ տեսակէտով յարմար լինի և կարողանայ գործիք դառնալ։

Ազգային-առաջադիմական կամ ազատամտական բանակը ունի իր որոշ, խիստ ընդգծուած աշխարհահայեացքը և ուղղութիւնը կաթողիկոսական հարցի վերաբերմամբ, որի մասին որևէ համաձայնութեան կամ կոմպրոմիսի մէջ մտնել չէ կարող ոչ ծայրայեղների, ոչ կեղծ-ազատական դաշնակցականների և ոչ կղերականների հետ։ Մինչ վերջինները միայն եկեղեցու մէջ են տեսնում հայ ժողովրդի փրկութեան և բարօրութեան միակ խարիսխը, հիմնաքարը, մինչ կեղծ-ազատական դաշնակցականները եկեղեցին համարում են լոկ իբրև գործիք, ժամանակաւոր գործիք իրանց նեղ կուսակցական շահերը առաջ վարելու համար, առաջադիմականները, ամենևին չընդունելով այն թէզիսը, թէ «արտաքոյ հայաստանեայց առաքելական եկեղեցւոյ չիք փրկութիւն», ամենևին չհամարելով հայոց եկեղեցին գործիք քրիստոնէական եկեղեցու հետ ոչ մի առնչութիւն չունեցող կուսակցական շահերի համար, նկատում են եկեղեցին իբրև մի կարևոր ֆակտօր հայ ժողովրդի հոգևոր, բարոյական և մտաւոր վերածնութեան և զարգացման համար, իբրև մի ազգային հաստատութիւն, որի մէջ ամենից շատ արտացոլում են ժողովրդական, դեմօկրատիական սկզբունքներ. ուստի և հետամուտ են, որ այդ եկեղեցու պետ ընտրուի մի եկեղեցական, տոգորուած ժողովրդական, դեմօկրատիական սկզբունքներով, կարող՝ միշտ բարձր պահել եկեղեցու բարոյական և հոգևոր հեղինակութիւնը իր մաքրութեամբ, իր քրիստոնէական անարատ կենցաղով, անձնուէր՝ ազգի և եկեղեցու շահերին և գործադրող՝ եկեղեցական վարչութեան և նրա հետ կապուած դպրոցական և այլ հաստատութիւնների մէջ ժողովրդապետական սկզբունքներ։

V

«Արօրի» հոկտեմբերի համարում մենք խօսեցինք այն գայթակղութեան և խայտառակ գործի մասին, որ յայտնի է «Դաշնակցական-Սպանդարական» անունով։ «Դաշնակցութիւն» կուսակցութիւնը պաշտօնապէս մեղադրեց «Նոր-Դար» լրագրի

խմբագիր Սպանդար Սպանդարեանին, իբրև «մատնիչ, լրտես և ռուսաց կառավարութեան գործակալ-պրովօկատոր», յայտնելով որ ունի իր ձեռքին անհերքելի, ջախջախիչ փաստեր, միևնոյն ժամանակ հարևանցի կերպով ակնարկելով, թէ բացի Սպանդարից կան և ուրիշներ, որոնք իր ժամանակին նոյնպէս կը մատնուեն հանրային ուշադրութեանը։ Այդպիսի մի սոսկալի անբարոյական արարքի մէջ մեղադրուող Սպանդար Սպանդարեանը բողոքեց և մեղադրանքը յայտարարեց զզուելի զրպարտութիւն։ Հայ հասարակութիւնը ամենևին չէր կամենում հաւատալ, որ հայ գրողը, հայ խմբագիրը՝ որքան էլ ընկած մարդ լինի՝ ընդունակ լինի այդպիսի ստորութեան, բայց Դաշնակցութեան խրոխտ և ոչ մի տարակութիւն չվերցնող յայտարարութիւնը խռովում էր շատերի հոգին. և երբ Ս. Սպանդարեանը մեկնեց Պարիզ՝ դատի հրաւիրելու իր մեղադրողներին, հայ հասարակութիւնը սրտի անձկութեամբ սպասում էր դատի ելքին։ Մենք այդ ժամանակ «Արօրի» մէջ գովելով «Մշակի» դիրքը, որ միակ կօրրեկտն էր այդ հարցում հայ բոլոր թերթերի մէջ, այն է լռութիւնը՝ մինչև գործի պարզուելը, այն եզրակացութեան եկանք, որ յամենայն դէպս ով և շահելու լինի դատը —Սպանդարը ճանաչուի մեղաւոր թէ Դաշնակցութիւնը զրպարտիչ—հայութեան բարոյականութիւնը սոսկալի հարուած է ստանում։ Եթէ, Աստուած չանի, Դաշնակցութեան հռչակած ջախջախիչ և անհերքելի փաստերը ապացուցուեն, մի անջնջելի արատ պէտք է տարածուի հայ մամուլի վրայ, որ, ինչ տեսակ ուղղութեան և պատկանելիս է եղել, երբէք իր գոյութեան ամբողջ ընթացքում այդպիսի քստմնեցուցիչ յատկութեան ոչ մի հատիկ ապացոյց չէ տուել։ Իսկ եթէ հաստատուի Սպանդար Սպանդարեանի անմեղութիւնը և դուրս գայ, որ Դաշնակցութեան յայտարարած ջախջախիչ, անհերքելի փաստերը գոյութիւն չունեն, այդ ժամանակ էլ մի ընդհանուր սարսուռով պիտի համակուի ամբողջ հայ ժողովուրդը, տեսնելով թէ ինչպէս մի կուսակցութիւն, իր կուսակցական ստոր շահերի համար, ընդունակ է մարդկանց ցեխոտելու, բարոյապէս մեռցնելու, և աւելի մեծ սարսուռով պիտի համակուի, մտածելով թէ ուրեմն որքան խեղճ անձինք հէնց այդպիսի երևակայեալ ջախջախիչ և անհերքելի փաստերի հիման վրայ զուր տեղ ենթարկուել են տէրրորի այդ կուսակցութեան ձեռքով։ Եւ այն ժամանակ այն «յեղափոխական անողոք Նէմիզիդան», որով սպառնում է Դաշնակցութիւնը իր երևակայեալ մատնիչներին և դաւաճաններին, պէտք է իր լախտի ամբողջ ծանրութեամբ,

ժողովրդի անզսպելի ցասման դէմքով, ծանրանայ այդ կուսակցութեան գլխին և ջարդուփշուր անէ նրան, որ ընդունակ է իրա ժողովրդի լաւագոյն զաւակներին սպանել լոկ իր կուսակցական նկատումների կամ շահերի համար։ Կա՞ն արդեօք որևէ ազգի յեղափոխական պատմութեան մէջ այսօրինակ գործիչներ։

Սպանդար Սպանդարեանը մեկնեց արտասահման ձեռնարկելու դատին։ Անցան ամիսներ։ Վերջապէս Մազմանեան անունով մի հայ վարդապետ հեռագրով աւետեց «Հովիտ» թերթին, թէ Սպանդարը անմեղ է ճանաչուել և նրա աղարտուած պատիւը, համբաւը վերականգնուած է։ Թեթևութեան մի հառաչ թռաւ ամենքի սրտից։ Լրագիրները արտատպեցին այդ ուրախացուցիչ լուրը, և սպասեցինք մանրամասնութիւնները լսելու։

Աւա՜ղ, եկած յետնագոյն մանրամասնութիւնները ամենևին չպարզեցին խնդիրը, այլ աւելի մթնացրին և խճճեցին։ Ճիշտ է, ապացուցուեց մի բան, որ յամենայն դէպս ցախցախից և անհերքելի փաստերը մեծ կասկածի ներքոյ են, բայց այն, ինչ որ պէտք էր՝ հասարակութեան խռովեալ և յուզեալ խիղճը հանգստացնելու համար, այդ չկայ։ Չկայ մինչև այժմ ոչ ձեռնհաս միջնորդ և անաչառ ու անկուսակցական դատարանի դատավճիռը, ոչ Դաշնակցութեան կտրուկ և բացարձակ յայտարարութիւնը, թէ Ս. Սպանդարեանը անմեղ է ճանաչուած և կուսակցութիւնը յետ է վերցնում իր մեղադրանքը, ոչ ևս իրանց՝ Բուրցէվի կամ Մենշիկովի ուղղակի հերքումները, որ իրանց մեղադրանքը չէ վերաբերում «Նոր-Դարի» խմբագիր Ս. Սպանդարեանին։ Բանից դուրս է գալիս—և այդ ես մենք ամենից առաջ իմացանք պ. Ս. Սպանդարեանի որդու՝ «Баку» լրագրի մէջ տպուած մի նամակից—թէ ոչ մի դատարան չէ քննել դեռ գործը, այլ Ս. Սպանդարեանի եղբայր Կոնստանդին Սպանդարեանը ինքնաբերաբար յայտնել է, թէ ինքն է եղել ռուսաց գաղտնի ոստիկանութեան մէջ ծառայող ագենտը և ոչ իր եղբայրը։ Վերջապէս Դաշնակցութեան պաշտօնական օրգան «Դրօշակ» թերթի այս յունուարի համարի մէջ տպուած պաշտօնական ազդը դարձեալ իր անորոշութեամբ ոչինչ չէ պարզում։ «Դրօշակը» խոստովանում է, թէ «յեղափոխական այլ և այլ հատուածների պատկանող մի քանի անձեր, կազմակերպելով նախնական քննութիւն Սպանդար Սպանդարեանի դէմ ուղղուած յայտնի մեղադրանքի առթիւ, պարզեցին անտարակուսելի կերպով, որ ռուս ոստիկանական դեպարտամենտի գործակալ-ագենտ եղել է Սպ. Սպանդարեանի աւագ եղբայրը, Կ.

Սպանդարեան, որ ցենզորի պաշտօն է վարում Օդեսսայում»։ Բայց դրա հետ միասին «Դրօշակը» աւելացնում է և հետևեալը. «Քննութիւնը ընդունեց դրա հետ միասին, որ խնդիրը վերջնականապէս չի լուսաբանուած։ Կ. Սպանդարեանը վճռականապէս ժխտում է, որ ինքն իբր թէ ներկայացել է եղբօր անուան տակ։ Մնում է պարզել, թէ ինչու պօլիցիական դեպարտամենտի փաստաթղթերում, ինչպէս նաև իրազեկ անձերի կողմից Վլ. Բուրցեվին տրուած յայտարարութիւնների մէջ, մատնացոյց են լինում խմբագիր Սպանդար Սպանդարեանի վրայ, որպէս ագենտի»։ Ապա թերթը յոյս է տածում, որ «յետագայ քննութիւնը կը կարողանայ պարզել խնդիրը իր բոլոր պարագաներով, և փափագում է, որ ի վերջոյ կասկածի ստուեր անգամ չմնայ՝ գէթ հայ խմբագրի պատուի վրայ»։

Տէր Աստուած, այն ինչ ճիզուիտական, մաքիավէլական լեզու է բանեցնում թերթը։ Ի՞նչպէս ապա յանդգնեց Դաշնակցութիւնը, չկազմակերպելով նոյնիսկ նախնական քննութիւն, վեր կենալ և մեղադրել մի հայ խմբագրի մի ամենաստոր և գարշելի արարքի մէջ, եթէ միայն կուսակցութիւնը անկեղծ նախանձախնդիր է հայ խմբագրի պատուին։

Եւ միւս կողմից ինչպէս թոյլ են տալիս իրանց Մազսուտեան վարդապետները և այլ անձինք վեր կենալ և յայտարարել, թէ քննութիւնը արդէն վերջնականապէս պարզել է Սպ. Սպանդարեանի կատարեալ անմեղութիւնը։ Եթէ ճիշտ է այդ, ինչպէս է յանդգնում Դաշնակցութիւնը դեռ կասկածի ներքոյ թողնել հարցը։

Ոչ. հայ հասարակութեան խիղճը չէ կարող անդորրանալ այդպիսի փոխադարձ և երկուստեք կասկածելի և անորոշ յայտարարութիւններով։ Այդ խիղճը կը հանգստանայ միայն այն ժամանակ, երբ միջնորդ անկուսակցական դատարանը, կամ շվէյցարական պետական արդարադատութիւնը կը յայտարարէ, որ Ս. Սպանդարեանը միանգամայն անպարտ է ճանաչուած, և կը ճանաչէ անբարեխիղճ կամ թիւրիմացութեան արդիւնք Դաշնակցութեան կողմից նրա դէմ հրապարակ նետուած մեղադրանքը։ Կամ երբ ինքը Դաշնակցութիւնը վճռական կերպով կը յայտարարէ, որ ինքը մեղադրել է մի անմեղի։ Կամ Ս. Սպանդարեանը դատարանի միջոցով պատժել կը տայ Դաշնակցութիւնը յանձին «Դրօշակի» իբրև գարշելի զրպարտչի, ինչպէս նա սկզբում յոխորտաց։ Լոյս, լոյս և լոյս այս հարցում։ Կոմպրօմիսները անտեղի են և անընդունելի։

VI

Եթէ հին՝ 1910 տարին տուեց հայկական իրականութեան և բարոյականութեան շրջանում այդպիսի մի գայթակղալից դէպք, նոր՝ 1911 տարին կարծէք չկամեցաւ յետ մնալ և արտադրեց երկու երևոյթներ դարձեալ մամուլի և գրական աշխարհի շրջանում, որոնցից մինը աւելի զաւեշտական բնաւորութիւն ունի, իսկ միւսը միայն խորին վիշտ և արգահատանք կարող է առաջ բերել հայ մամուլի և գրականութեան անկեղծ բարեկամների շրջանում։ Առաջինը՝ զաւեշտականը՝ հայ վիպագիր և դրամատուրգ Շիրվանզադէի դէպքն է, երկրորդը՝ հայ բանաստեղծ Առաքել Բաբախանեանի (Լէօյի) դէպքը։

Շիրվանզադէն գրել է մի նոր թատրոնական երկ «Արմենուհի» անունով, որ խաղացուեց հայ բեմի վրայ Թիֆլիսում։ Մի կողմն թողնելով այն կասկածները, որոնք յարուցուեցին նոր պիէսի ինքնուրոյնութեան մասին, պիէսը համարուեց շատերի կարծիքով անաջող և անմշակ։ Դոկտոր Բ. Աղասարեան, հայ գրական և հասարակական կեանքի մէջ աշխատող մի գործիչ, տպագրեց մի քննադատական յօդուած «Մշակի» մէջ «Արմենուհի» պիէսի մասին. քննադատութիւնը թէև աննպաստ էր, բայց գրուած՝ վերին աստիճանի կօրրեկտ և գրական էթիկայի օրէնքների պահպանութեամբ։ Սակայն դա դուր չեկաւ հեղինակին՝ Շիրվանզադէին, որ փոխանակ հերքելու քննադատի կարծիքները փաստերով՝ հանդէս եկաւ «Հօրիզօն» թերթի մէջ մի յօդուածով, որի մէջ այն տարօրինակ և զաւեշտական միտքն էր անցկացնում, թէ ինտելիգենտ անձինք, եթէ մասնագէտ գրողներ չեն, իրաւունք չունեն կարծիք յայտնել այս կամ այն հեղինակի արտադրութեան մասին։ Այսպէս, օրինակ, ըստ պ. Շիրվանզադէի լօգիկայի, բժիշկը, փաստաբանը, գիւղատնտեսը, թէև բարձր ուսումն ստացած, իրաւունք չպիտի ունենան իրանց կարծիքն արտայայտել։ Այս կերպով քար էր նետվում և բժ. Աղասարեանի հասցէին, այն եւ զռեհիկ ոճով (ամեն մի դալլաք փորձում է իր ածելին հայ գրականութեան և գեղարուեստի գլխին), թէ ինչպէ՞ս յանդգնեցիր կարծիք յայտնել Շիրվանզադէի երկի մասին։ Ի հարկէ, Շիրվանզադէն չէր գրի այդ մաղձոտ յօդուածը, եթէ բժ. Աղասարեանը գոված լինէր նրա պիէսը և նպաստաւոր կարծիք յայտնած նրա մասին։

Բնական է, որ Շիրվանզադէի այդ տարօրինակ և աւելի քան տգէտ կարծիքը ընդհանուր անհաւանութիւն գտաւ հասա-

րակութեան կողմից և առակ դարձաւ. տեսակցութիւնների, ժողովների ժամանակ երբ մինը որևէ կարծիք էր յայտնում այս և այն երևոյթի, դէպքի մասին, որ իր մասնագիտութեան չէր վերաբերում, խօսակիցը հեգնանքով ասում էր. «Դուք իրաւունք չունէք, պարոն, կարծիք յայտնել, ըստ պ. Շիրվանզադէի»։

Դժբախտաբար, Շիրվանզադէն ոչ միայն չզգաց իր սխալը և ազնուաբար չխոստովանուեց, այլ ընկաւ նորանոր մոլորութիւնների մէջ և իրան յատուկ ամբարտաւան մեծամտութեամբ թոյլ տուեց իրան նոյն իսկ հայ ինտելեգենցիայի հասցէին արտասանել մի խօսք, որ Պարիզի բուլվարների առաջ կանգ առնող կառապաններին է միայն յատուկ և որը դուք չէք լսի ոչ միայն որևէ օրինաւոր հասարակութեան մէջ, այլ նոյն իսկ կիսաինտիլիգենտ մարդկանց բերանից։ «Ժը մ'ան ֆու»— ասաց Շիրվանզադէն («Հօրիզոն» № 25) և դրանով ամեն բան ասաց։

Սակայն եթէ Շիրվանզադէի դէպքի վրայ կարելի է նայել զուեշտական տեսակէտից, նոյնը չէ կարելի, դժբախտաբար, ասել մի ուրիշ գրողի՝ Լէօի դէպքի մասին, որ անկեղծ ցաւ պէտք է պատճառի հայ գրական մաքուր բարքերին և հայ գրականութեան պատուին նախանձախնդիր բոլոր անձանց։

Լէօն մի շարք բանասիրական հեղինակութիւններ, գրական և պատմական ուսումնասիրութիւններ ունի գրած, որոնք բաւական յարգի էին բանասէրների աչքում և որոնցով իսկապէս նա անուն և հռչակ ստացաւ։ Դեռ այն ժամանակ, երբ նա մշակական կամ առաջադիմական ուղղութեամբ մի գրող էր, նրա այդ պատմական, բանասիրական ուսումնասիրութիւնների մէջ նրա հակառակորդները կամ այն գրողները, որոնց գրական գործունէութիւնը ևս քննադատութեան էր ենթարկել, մեղադրում էին նրան միակողմանիութեան և անաչառութեան պակասութեան մէջ։ Սակայն չնայելով այդ տրտունջներին, հասարակութիւնը նայում էր պ. Լէօի աշխատասիրութիւնների վրայ իբրև ուսումնասիրութիւնների, որոնք կատարուած են մանրամասնութեամբ, պատմական ճշտութեամբ և բարեխղճութեամբ։ Եւ յանկարծ, փրկչական 1911 թ. փետրուար ամսին, ինքն հեղինակը մի գրչի հարուածով, անցողակի արտասանուած մի խօսքով գալիս է ոյժ տալու իր հակառակորդների ասածին և մեծ կասկած սփռելու իր ուսումնասիրութիւնների և երկերի բարեխղճութեան, ճշմարտութեան և անաչառութեան մասին։ Այդտեղ շատ յարմար է ռուսական ա-

ասածը թէ՝ что напишешь перомъ, не вырубишь топоромъ.

Ինչպէս յայտնի է, պ. Լէօն ի թիւս այլոց գրել է 3 հատոր՝ Գր. Արծրունու մասին։ Մեծ հրապարակախօսի, նրա աջակից աշխատակիցների և «Մշակի» գործունէութեան պատմութիւնը գրելու համար նա, անկասկած, երկար ժամանակ ուսումնասիրել է թէ ամբողջ «Մշակը» իր երևման օրից և թէ բոլոր միւս հայ թերթերը, որոնց թւում, անշուշտ, և «Նոր-Դար» թերթը։ Այդ աշխատութեան մէջ տպելով և Հ. Առաքելեանի պատկերը՝ նա գրել է, թէ սա ամբողջ 30 տարի հաւատարիմ մնաց Գր. Արծրունու և «Մշակի» դրօշակին։ Նա ի նկատի է ունեցել, անշուշտ, և այն փաստը, որ Հ. Առաքելեանն սկսել է աշխատակցել «Մշակին» սրա սկսման օրից, այն է՝ 1872 թուից ի վեր։ Այդ աշխատութիւնը Լէօն գրել է 1902 թ., ուրեմն սրանից գրեթէ 10 տարի առաջ։ Դրանից յետոյ ևս պ. Լէօն ամբողջ 5 տարի գործել է «Մշակի» մէջ Հ. Առաքելեանի հետ միասին և հեռացել «Մշակից» 1907 թ.։ «Մշակից» հեռանալուց յետոյ, անշուշտ, անձնական յարաբերութիւնները ցրտացան, լարուեցին։ Վերջերս «Հօրիզոնի» և «Մշակի» միջև մղուող մի բանակռուի առիթով, Լէօն գրեց, թէ («Հօրիզոն», № 26) «ես սաստիկ մեղանչել եմ ճշմարտութեան և վաւերագրերի դէմ, գրելով իմ «Գրիգոր Արծրունի» աշխատութեան մէջ, թէ Հ. Առաքելեանը երեսուն տարուայ ընթացքում հաւատարիմ է մնացել «Մշակի» դրօշակին (Հ. II, եր. 264)»։ Ապա, կամենալով արդարացնել իրան և այն մեղադրանքից, թէ ինչպէս է պատահել, որ նա, Լէօն, երկար և ձիգ տարիներ արշաւանք մղելով թէ «Մշակում» և թէ իր երկասիրութիւնների մէջ Շիրվանզադէի դէմ, անուանելով նրան հասարակութիւնը անբարոյականացնող վիպագիր, անարժան՝ գրական հակառակորդ լինելու, ուրանալով նրա գոյութիւնը, յանկարծ այսօր ձեռք է մեկնել նրան և նրա հետ միասին գործում է, Լէօն գրում է, թէ որովհետև «իմ գրական յոբելեանին Շիրվանզադէն ինձ ուղարկեց իր շնորհաւորութիւնները, մեծարեց իմ գրական գործունէութիւնը, ողջունեց ինձ իբրև գրողի», ուստի և ինքը ձեռք մեկնեց նրան։

Որպիսի՜ բարոյական մանկութիւն, որպիսի՜ սկանդալ գրական բարքերի և բարոյականութեան մէջ։ Ասել թէ՝ «ես մեղանչել եմ ճշմարտութեան և վաւերագրերի դէմ»՝ նշանակում է ուրիշ խօսքերով ասել՝ «ես խարդախել եմ դօկումենտները»։ Եւ սակայն, ուղղակի զարհուրելի է, երբ տեսնում էք, թէ գրողը ինչի՞ համար է խարդախել դօկումենտները։ Նա Հ. Առաքելեանի

վերաբերմամբ խարդախել է, որովհետև նրա բարեկամն և ընկերն է եղել, բայց յետոյ, երբ թշնամացել է, այդ ժամանակ միայն նա խղճահարուել է և այդ ժամանակ միայն յիշել կամ որոնել և գտել «Նոր-Դարի» մէջ տպուած մի յօդուած և մի նամակ, որոնցից նա տեսել է, որ մեղանչել է վաւերագրերի դէմ։ Թէ ինչ բովանդակութիւն ունեն այդ յօդուածը և նամակը, Լէօն խոհեմաբար թագցնում է։ Անշուշտ, այդ մի հատիկ յօդուածը և մի հատիկ նամակն իր ժամանակին կը հրատարակուեն, և հասարակութիւնը կիմանայ նրանց բովանդակութիւնը։ Միւս կողմից, լօգիկաբար հետևցնելով, պէտք է ընդունել իբրև անժխտելի փաստ, որ այն ամենը, ինչ որ Լէօն առաջ գրել է Շիրվանզադէի մասին, ճիշտ չէ, և նա մեղանչել է ճշմարտութեան և վկայագրերի դէմ, քանի որ առաջ նա համարել է Շիրվանզադէին անբարոյականացնող վիպագիր, անարժան՝ մարդու կոչման, իսկ այժմ նա նրան ձեռք է մեկնում, իբրև ազնիւ հակառակորդի, և իբրև արդարացումն բերում է այն հանգամանքը, որ Շիրվանզադէն շնորհաւորել է իր յօբելեանը և մեծարել իրան։ Ուրեմն եթէ Շիրվանզադէն շնորհաւորած չը լինէր, Լէօն նրա մասին կը մնար իր նախկին կարծիքի մէջ. ուրեմն պատճառը դարձեալ անձնական է։ Այդպիսով դուրս է գալիս, որ Լէօն պատմական փաստերը, վկայագրերը դասաւորում կամ յեղաշրջում է ըստ իր անձնական համակրութիւնների և հակակրութիւնների. երբ մէկը բարեկամ և ընկեր է նրան, նա ամբողջ 30 տարի ազնիւ մարդ է, բայց հէնց որ դադարում է բարեկամ և ընկեր լինելուց կամ իր դէմ է գրում, այդ երեսնամեայ անդաւաճան և հաւատարիմ դրօշակակիրը դառնում է բոլորովին այլ յատկութիւնների տէր. կամ երբ մէկը թշնամի է նրան, նա ամբողջ 25 տարի հռչակուել է անբարոյականացնող վիպագիր, անարժան և կեղտոտ մարդ. իսկ երբ այդ անբարոյականացնող վիպագիրը արժանացնում է նրան իր մեծարանքին, յանկարծ նա դառնում է ազնիւ հակառակորդ։

Բարոյական և մտաւոր անկման ու սնանկութեան մէջ սրանից աւելի խոր ընկնել անկարելի էր...

Եւ սակայն այդ եղաւ Լէօի համար հէնց իր սեպհական խոստովանութեամբ։

VII

Սակայն ժամանակ է, որ նկարագրենք և հայկական իրականութեան լուսաւոր, մխիթարական երևոյթները։

Այդ երևոյթների մէջ կարևոր տեղ են բռնում Ժամհարեան և Ղուկասեան, Քանանեան կտակները և նուէրները։

Բնիկ շուշեցի, չքաւոր հօր զաւակներ, Ժամհարեան եղբայրները իրանց բնական ուշիմութեամբ, խելքով և առևտրական ընդունակութեամբ կարողանում են երկար տարիների տոկուն աշխատութիւնից յետոյ ձեռք բերել բանկային աջող գործողութիւնների շնորհիւ մեծ հարստութիւն և պատուաւոր դիրք գրաւել Ռուսաստանի ֆինանսական և բանկային աշխարհում։ Դեռ շատ վաղուց նրանք զգում են և անհրաժեշտութիւնը՝ մասն և բաժին հանելու յօգուտ այն միջավայրի՝ հայ չքաւոր ժողովրդի, որի շրջանից դուրս էին եկել և իրանք։ Եւ ահա նրանք իրանց ծննդավայր Շուշի քաղաքում հիմնում են քաղաքային հիւանդանոց դեռ 20 տարի սրանից առաջ։ Նրանք հետաքրքրվում են ազգային և հասարակական խնդիրներով և միշտ իրանց լուման ձգում էին բոլոր ազգային, հասարակական, մարդասիրական ձեռնարկութիւնների համար սահմանուած գանձանակի մէջ։ Մի դէպք, մի աղէտալի, միևնոյն ժամանակ ոճրագործական դէպք եկաւ դառնութեամբ լցնելու Ժամհարեան եղբայրների սիրտը. Նրանց եղբօր՝ Իսահակի սպանութիւնը որպէս թէ յանուն յեղափոխական գաղափարի մի խմբակի կամ կուսակցութեան կողմից, որ ստեղծուել էր որպէս թէ Հայաստանը փրկելու Թիւրքական լծից, բայց շարունակ հայերի արիւն թափեց, որոնց մէջ և շատ անմեղների և դրանց թւում նաև Իսահակ Ժամհարեանի։ Այդ դէպքը ստիպեց Ժամհարեաններին երկար ժամանակ քաշուած դիրք բռնել ազգային ասպարէզից։ Սակայն նրանք վերջ ի վերջոյ հասկացան, որ մի քանի ոճրագործների պատճառով հայ ժողովուրդը չէ կարող պատասխանատու լինել։ Եւ Ժամհարեան եղբայրներից մինը՝ Աթանաս, վախճանուելով, չմոռացաւ հայ ժողովուրդը և կտակեց 250,000 ր. մի գումար՝ հայ ժողովրդի տնտեսական վիճակի բարոքման համար, հիմնարկութեամբ գիւղատնտեսական ինստիտուտի։ Հանգուցեալի եղբայրները, կամենալով յաւերժացնել իրանց եղբօր յիշատակը, իրանց կողմից ևս որոշեցին պահել այդ գումարը անձեռնմխելի և յանձն առան գիւղատնտեսական ինստիտուտի շինութեան և կահաւորման բոլոր ծախսերը։ Ձեռնարկութեան իրագործումը յանձնուած է «Մշակի» խմբագիր Ալէքսանդր Քալանթարին, որ աջակից ունենալով իրան մի յատուկ մասնաժողով՝ կը կարողանայ, անշուշտ, մօտ ապագայում գլուխ բերել Ժամհարեան գիւղատնտեսական ինստիտուտը։

Ոչ նուազ ուշագրաւ է Ղուկասեան կտակը։ Աւետիք Ղուկասեան, նոյնպէս շուշեցի դրամատէր, մի անուսումն մարդ, բայց լցուած քրիստոնէական և հայասիրական զգացումներով, դեռ իր կենդանութեան ժամանակ նուիրեց 60,000 ր. Էջմիածնի ճեմարանին. ապա հաստատեց Ղուկասեան մրցանակ՝ հայագիտական լաւագոյն աշխատութիւնների համար, որի հանդէսը կատարվում է ամեն տարի ապրիլի 7-ին, Աւետեաց տօնի օրը, Թիֆլիսի առաջնորդարանում. և ի վերջոյ, իր մահից առաջ, որ տեղի ունեցաւ 10 տարի սրանից առաջ, թողեց մի կտակ, որով իր ամբողջ կարողութիւնը իր միակ դուստր Թամարայի մահից յետոյ կտակում է Ղուկասեան անունով հայկական մի ակադեմիա հիմնելու Թիւրքաց Հայաստանի մի որևէ կենտրոնում կամ մի այլ տեղ, ըստ համաձայնութեան Ամենայն Հայոց Կաթողիկոսի և Կ. Պօլսի հայոց պատրիարքի։ Թամարան 16 տարեկան դեռափթիթ հասակում վախճանուեց այս յունուարի 10-ին, և նրա մահուամբ Ղուկասեանի ամբողջ կարողութիւնը, որ լիկվիդացիայից յետոյ կարող է հասնել մի միլիօնի, պէտք է գործադրուի այն գեղեցիկ նպատակին, որի համար նուիրատուն յատկացրել է։ Ճիշտ է, հանդէս են եկել հանգուցեալի եղբօրորդիները, որոնք դիմել են դատարանին և ձգտում են ոչնչացնել տալ կտակը յօգուտ իրանց, բայց պէտք է յուսալ, որ կտակը, արդէն մի անգամ հաստատուած դատարանից, այս անգամ էլ կը հաստատուի, կամ գուցէ կտակակատարները մի միջոց գտնեն համաձայնութեան գալու վիճող ժառանգների հետ։

Ղուկասեանի կտակը առաջացրեց որոշ առարկութիւններ մեր հասարակութեան մէջ, թէ որքան նպատակայարմար և արդարացի է, երբ, օրինակ, Ղուկասեանը, իբրև շուշեցի, փոխանակ կարողութիւնը կտակելու իր հայրենի Շուշի քաղաքին, որ այժմ ամբողջովին աւերուած է, կամ հայրենի երկրին՝ Ղարաբաղին, ուր 200,000 հայ ժողովուրդ քայքայուած տնտեսական դրութեամբ խարխափում է խորին տգիտութեան մէջ, կըտակել է մի հեռաւոր աշխարհի օգտին։ Ղարաբաղցիների այս տրտունջն ունի իր որոշ արդարացուցիչ հիմքը։ Վերջին տարիները մի շարք ղարաբաղցիներ—Մ. Արամեանց, Միր. Խաչատրեանց, Ա. Թունիբէկեան և այլք—իրանց նուիրաբերութիւնները և կտակները կատարեցին կամ յօգուտ Թիֆլիս քաղաքի, որ առանց այն էլ հարուստ է և որին կտակներ են անում և բազմաթիւ տեղացի հայեր, և կամ Էջմիածնին, որ նոյնպէս ստանում է նուէրներ և կտակներ զանազան կողմերից։ Բայց

թշուառ, քայքայուած Ղարաբաղը, այդ լայնածաւալ երկիրը, մնում է լքեալ և աչքից ընկած, և ոչ ոք չէր մտածում նրա մասին։ Եւ, օրինակ, Ա. Թիւնիբէկեանի կտակը, որ իր բազմարժէք տունը Թիֆլիսում կտակել է իր կնոջ մահից յետոյ Թիֆլիսի քաղաքային վարչութեանը, որպէս զի սա բաժանէ տոկոսիքը չքաւորներին ամեն տարի, մինչ այնտեղ իր հայրենիք Շուշում ահագին բազմութիւն մատնուած է ծայրայեղ չքաւորութեան, իսկ Թիֆլիսը ունի այլ միջոցներ՝ խնամելու իր չքաւորներին, ահա այդպիսի կտակը, արդարև, մի աննպատակայարմար գործ է։ Սակայն Ա. Ղուկասեանի նկատմամբ պէտք է մի հանգամանք ի նկատի ունենալ. Նա իր կտակը կատարել է մի այնպիսի ժամանակ, գօլիցինեան ըէժիմի օրով, երբ հայ ժողովուրդը չէր վստահանում ոչ մի կտակ անել յօգուտ ազգային և եկեղեցական հաստատութիւնների, որովհետև բոլոր ազգային-եկեղեցական գոյքերը գրաւուած էին։ Անշուշտ, այլ պայմաններում նա չէր մոռանայ իր հայրենիքը, և այժմ մնում է, որ նրա կտակակատարները կամ տոհմի միւս ներկայացուցիչները լրացնեն այդ պակասը, կամ մի որոշ համաձայնութիւն կայանայ կաթողիկոսի և պատրիարքի միջև՝ կտակի գումարից որոշ մասն և բաժին հանելու նրա հայրենիքին։

Միւս կողմից չմոռանանք, որ որքան էլ անմխիթար լինի Շուշու և Ղարաբաղի վիճակը, բայց Թիւրքաց Հայաստանի վիճակն աւելի անմխիթար է և աւելի արժան՝ կարեկցութեան և ուշադրութեան մեր հարուստների կողմից։

Ոչ նուազ համակրական է և յարգելի տիկին Վ. Քանանեանի նուիրատուութիւնը՝ Էջմիածնի ճեմարանին կից մանկավարժական թանգարան հիմնելու համար յատկացրած 30,000 րուբլին։ Տիկին Քանանեանը, մեր հայ կանացի դասի ամենից փայլուն դէմքերից մինը, յայտնի իր կրթական, մեկենասական ձեռնարկութիւններով (նա տարիներ առաջ հիմնեց Սպահանի Նոր-Ջուղա աւանում Քանանեան ազգային կենտրոնական վարժարանը, ապահովելով նրա գոյութիւնը. Նա մեկենաս հանդիսացաւ «Մուրճ» ամսագրին և այլն), իր այս նոր նուէրով, որ կատարում է ի յիշատակ իր հանգուցեալ որդի՝ Վարդանի, անկասկած մի նոր զարկ պէտք է տայ մանկավարժական գործի զարգացմանը մեր մէջ։

---

## ԹԻՒՐՔԱՀԱՅ ԿԵԱՆՔ

## I

Թիւրքահայոց կեանքի մեր վերջին տեսութիւնից յետոյ «Արօրի» մէջ՝ տեղի ունեցան մի քանի կարեւոր դէպքեր, որոնց մէջ գլխաւորը պատրիարքական ճգնաժամն է և ազգային ժողովի գործունէութեան անդամալուծումը որոշ խմբակի գործ դրած ջանքերի շնորհիւ։ Մեր այդ տեսութեան ժամանակ օրուայ հրատապ հարցը «բաց ու գոցի» խնդիրն էր, որ իսկապէս և առաջ էր բերել թէ Դուրեան պատրիարքի և թէ ազգային վարչութեան հրաժարականները։ Այդ ժամանակ մենք այն կարծիքն յայտնեցինք, թէ «խնդիրն այժմ այնքան «բաց ու գոցի» մասին չէ, որքան այն մեծ հարցի մասին, թէ ո՛վ պէտք է խոնարհի— դաշնակցականնե՞րը ազգի, ժողովրդի կամքի առաջ թէ՞ ամբողջ հայ ազգը՝ դաշնակցականների կամքի առաջ»։ Եւ մեր դրած թեզիսը ճիշտ էր. ու գոհութիւն Աստուծոյ, որ պայքարի վերջնական ելքը այն եղաւ, որ դաշնակցականները ստիպուեցին խոնարհել ազգի կամքի առաջ, թէև այդ կատարուեց երկար և յամառ պայքարից յետոյ։

Պատրիարքական ճգնաժամը, որ առաջ եկաւ Դուրեան պատրիարքի հրաժարմամբ, բարդուեց այն պատճառով, որ ազգային ժողովի դաշնակցական անդամներից բաղկացած փոքրամասնութիւնը ամեն կերպ աշխատեց թոյլ չտալ, որ այդ հրաժարականն ընդունուի։ Ինքը Դուրեան պատրիարքն ևս կարծէք ոյժ տուեց այդ ջանքերին իր բռնած անորոշ, տարտամ դիրքով։ Առ հասարակ Դուրեան պատրիարքի ամենամեծ սխալն եղաւ ոչ այն, որ նա հրաժարուեց դիմել պետական արդարադատութեան և իշխանութեան ոյժին՝ սանձահարելու համար «ազատական» կոչումը կեղծօրէն ընդունած դաշնակցականներին, որոնք, չկարողանալով պարլամենտական և սահմանադրական եղանակով «քալեցնել» իրանց ծրագիրները և դիտաւորութիւնները, դիմում էին բռնական միջոցների, այլ այն եղաւ, որ նա չհասկացաւ, թէ անհրաժեշտ է ազատել Թիւրքահայ ժողովուրդը դաշնակցական բռնապետութիւնից, եթէ միայն ցանկանում է ինք հայ ժողովրդի բարօրութիւնը։ Այդ ճշմարտութիւնը հասկացել էր ազգային ժողովի մեծամասնութիւնը. և մինչ Դուրեան պատրիարքը պէտք է աջակցէր, միանար մեծամասնութեան ջանքերին, նա, ընդհակառակը, խրախուսում էր իր վարմունքով կեղծ ազատականներին, որոնց համար կարևորը, էականը ոչ

թէ ամբողջ հայ ժողովրդի շահերն են, այլ լոկ կուսակցական
շահերը։ Սակայն մեծամասնութիւնը չէր կարողանում յաղթա-
կան դուրս գալ լոկ այն պատճառով, որ կեղծ ազատականների
նման կազմակերպուած չէր. և ահա առաջ եկաւ անհրաժեշտու-
թիւնը կազմակերպուելու և ստեղծուեց կենտրոնի խմբակցու-
թիւնը, որ իբրև առաջնորդ պէտք է մեծամասնութեան ղեկա-
վարը հանդիսանար։ Եւ այդ կազմակերպութեան բարերար ար-
դիւնքը չյամեց երևալ։ Ազգային ժողովը մեծամասնութեամբ
ընդունեց պատրիարքի և վարչութեան հրաժարականները,
ընտրեց նոր վարչութիւն (կրօնական և քաղաքական ժողով-
ներ)։ Կեղծ ազատականները այն ժամանակ դիմեցին ուրիշ
տակտիկայի։ Նրանք, մասնակցելով ժողովի բացմանը և նրա
պարապմունքներին, վերջում, քուէարկութեան ժամանակ, երբ
նկատեցին իրանց պարտութիւնը, թողին ժողովը և հեռացան
և ապա բողոքեցին, թէ ժողովը մեծամասնութիւն չէ ունեցել։
Սակայն կենտրոնի խմբակցութիւնը, որ գործել էր միանգա-
մայն օրինաւորապէս, պնդեց իր որոշման վրայ։ Ապա կեղծ ա-
զատականները աշխատեցին յուզմունք և ցոյցեր գրգռել թիւր-
քահայ ժողովրդի մէջ յօգուտ Դուրեանի, որպէս զի թոյլ չը
տան սրա հրաժարումը, առարկելով թէ հրաժարականը չէ
վճռուած ազգային ժողովի մեծամասնութեամբ։ Դուրեան պատ-
րիարք միջին ճանապարհն ընտրեց. նա ընդունեց, որ իր հրա-
ժարականը օրինաւոր կերպով է ընդունուած ազգային ժողովի
կողմից, բայց պահանջեց, որ վարչութեան հրաժարականի և
նոր վարչութեան ընտրութեան խնդիրները նորից քննուեն
ազգային ժողովի մի նոր նիստում, որ բաղկացած լինի 71
երեսփոխաններից։ Այս պահանջը դրվում էր դաշնակցականնե-
րի կամ կեղծ-ազատականների թելադրութեամբ, որոնք յոյս
ունէին, թէ իրանք բացակայելով (նրանք դիտմամբ չէին յա-
ճախում ազգային ժողովի նիստերը, որպէս զի ժողովը չկայա-
նայ) կենտրոնի խմբակցութիւնը անկարող կը լինի օրէնքով
պահանջուած 71 երեսփոխաններ գումարել և նիստը կայացնել։
Ի պատիւ կենտրոնի խմբակցութեան գործունէութեան պէտք
է ասել, որ նա կարողացաւ այդ դժուարութեանը ևս յաղթել։
Սկզբում նա գումարեց 70 երեսփոխաններ և միայն մի հատիկ
երեսփոխանի բացակայութիւնը պատճառ եղաւ ժողովի չկայա-
նալուն, բայց պարզ էր, որ յաջորդ անգամին 71 թիւը լրանայ
և նոյն իսկ աւելի թուով երեսփոխաններ գան մասնակցելու
ժողովին։ Այդ իրողութիւնը ապացուցեց, որ մեծամասնութիւ-
նը կարող էր ամենայն իրաւունքով համարել իրան արտայայ-

տիչ ազգի կամքի, քանի որ բաղկացած էր մօտ 85 երեսփոխաններից։

Այդ կարևոր հանգամանքն էր, որ ստիպեց կեղծ ազատականներին զիջել և խաղաղասիրական տակտիկա բռնել։ Կայացաւ երկու կուսակցութիւնների միջև համաձայնութիւն, որի զօրութեամբ Դուրեանը հրաժարուեց պատրիարքութիւնից, առժամանակեայ պաշտօնի կոչուեց հին՝ դոկտոր Սեղբոսեանի վարչութիւնը (հակա դաշնակցական), նոր վարչութեան ընտրութիւնը թողնուեց առաջիկայ ապրիլ ամսին, մինչև որ կը կայանայ երեսփոխանների որոշ մասի նոր ընտրութիւն, և պատրիարքական տեղապահ ընտրուեց Վահրամ արքեպիսկոպոս Մանկունին, որին յամենայն դէպս չէ կարելի կասկածել, թէ որևէ համակրութիւն կարող է ունենալ հանդէպ դաշնակցականների։

Նոր պատրիարքի ընտրութիւնը կը կատարուի ապրիլին։

Հաւանական թեկնածուներ հանդիսանում են Արշարունի, Մանկունի, Յովակիմեան արքեպիսկոպոսները։

II

Գալով նախկին պատրիարք Օրմանեանին, պէտք է ասենք, որ արդէն նկատւում են ջանքեր որոշ խմբերի կողմից՝ առաջ քաշել և նրա կանդիդատութիւնը յաթոռ պատրիարքութեան, որպէս զի կարելի լինի այդտեղից առաջ քշել և նրա կանդիդատութիւնը յաթոռ կաթողիկոսութեան ամենայն հայոց։ Եւ եթէ ապրիլ ամսին գումարուելիք ազգային երեսփոխանական ժողովը վերընտրի Օրմանեանին պատրիարք, դա անկասկած ապացոյց կը լինի, որ թիւրքահայերը կառաջարկեն նրան և իբրև կաթողիկոսական ընտրելի։ Օրմանեանի կանդիդատութեան աջողութեանը, անշուշտ, քիչ չի նպաստի և այն կարևոր հանգամանքը, որ նրա վրայ բարդուած մեղադրանքները քննող քննիչ յանձնաժողովը ազգային ժողովին ներկայացրած իր տեղեկագրի մէջ գրեթէ անպարտ է արձակում Օրմանեանին։ Մենք ասացինք «գրեթէ», որովհետև քննիչ յանձնաժողովը եթէ գտել է և մի քանի կէտեր, որոնց մէջ Օրմանեանի վարմունքը չէ նկատուել անբասիր, բայց այդ կէտերում ևս նա գտել է մեղմացուցիչ պարագաներ։ Գալով դրամական զեղծումների մեղադրանքին, քննիչ յանձնաժողովը, ճիշտ է, չէ քննել այդ խնդիրը, բայց քանի որ Օրմանեան հրատարակել է իր բոլոր հաշիւները և այդ հրատարակութիւնից յետոյ ոչ ոք չէ պնդել և հետամուտ չէ եղել պաշտօնապէս մեղադրել նրան զեղծումների և վատ-

նումների մէջ, պէտք է ընդունել, որ Օրմանեան այդ կէտում ևս արդարացած պէտք է նկատուի։ Ընդհանուր առմամբ, Օրմանեանի վրայ բարդուած բոլոր մեղադրանքները դուրս են եկել կամ անճիշտ, կամ անգոյ, կամ սաստիկ չափազանցուած, և գրեթէ անկասկած է, որ ազգային ժողովը, որը շուտով պէտք է արտասանէ իր դատավճիռը, միանգամայն անպարտ արձակէ նրան կամ գուցէ ձևական և ոչ իրողական ապօրինութիւններ գտնէ նրա գործունէութեան մէջ։ Այսպիսով այն ահագին ամբաստանութիւնները, որոնք բարդուեցին նախկին պատրիարքի վրայ, ջուրն են ընկնում։ Թէ այդ ամբաստանութիւնները լուրջ բնաւորութիւն չէին կրում առհասարակ, դրա մի ապացոյցն և այն է, որ գլխաւոր մեղադրողը Գրիգորիս վարդապետ Գալաքեանն է, այն եկեղեցականը, որի թեթևամտութեան մի ապացոյցը տեսանք Իզմիրլեանի մահից յետոյ, երբ նա հրատարակեց «Ժամանակ» թերթում իր այնքան թեթևամիտ «մերկացումները» Էջմիածնի միաբանների մասին։

III

Մի քոպէ հայութիւնը սաստիկ յուզմունք կրեց, երբ հեռագրական գործակալութիւնը իբրև լուր հաղորդեց, որ Ադանայում տեղի է ունեցել հայերի նոր կոտորած։ Յետնագոյն տեղեկութիւնները ցոյց տուին, որ, արդարև, թիւրք յետադիմական տարրերի կողմից պատրաստութիւններ տեղի են ունեցել նոր կոտորած սարքելու, բայց, ինչպէս երևաց, դաւադրութիւնը չէ աջողուել։

---

## ՊԱՐՍԿԱՀԱՅ ԿԵԱՆՔ

Այն ցաւալի միջադէպը, որ տեղի էր ունեցել Էջմիածնում հանգուցեալ Կաթողիկոսի և Ատրպատականի թեմի առաջնորդ Կարապետ եպիսկոպոսի միջև, ստիպել էր վերջինիս իր հրաժարականը մատուցանել Կաթողիկոսին առաջնորդական պաշտօնից։ Կաթողիկոսը ոչ մի կարգադրութիւն չարած վախճանուեց, բայց մինչև նրա մահը Ատրպատականի թեմի պատգամաւորական ժողովը, որին նոյնպէս առաջնորդը ուղարկել էր իր հրաժարականը, անընդունելի էր համարել այն և որոշել խնդրել Կաթողիկոսին՝ մերժել հրաժարականը և հրամայել Կարապետ եպիսկոպոսին վերադառնալ իր թեմը։ Պատգամաւորները Էջմիածին գալով գտան Հայրապետին վախճանուած և դիմեցին տեղապահ սրբազանին, որ յարգեց պատգամաւորական ժողովի

միջնորդութիւնը և հրաման գրեց առաջնորդին՝ վերադառնալ իր թեմը։ Վերջինս խոհեմութիւն ունեցաւ անսալ այդ հրամանին և մեկնեց Թաւրիզ։ Պատգամաւորական ժողովի որոշումը ցոյց է տալիս, որ Ատրպատականի թեմի ժողովուրդը յարգանքով և համակրութեամբ է վերաբերվում իր առաջնորդին և գնահատում է նրա գործունէութիւնը։ Կարապետ եպիսկոպոս պտոյտ էր գործել իր թեմում, ծանօթացել էր ժողովրդի կարիքների հետ, հետևաբար ձեռք էր բերել հարկաւոր ձեռնհասութիւնը, շնորհիւ անմիջական ուսումնասիրութեան, իմանալ իր ժողովրդի վիճակը և միջոցներ ձեռք առնել գոհացում տալու իբրև հովիւ և ազգային վարչութեան նախագահ ամենից շատ աղաղակող կարիքներին։ Հեռանալ և հրաժարուել թեմից այդ ուսումնասիրութիւնից յետոյ՝ ուղղակի յանցանք կը լինէր, մանաւանդ որ ներկայումս առաջնորդի ներկայութիւնը այդ թեմում աւելի քան կարևոր է։

Պարսկաստանի դրութիւնը չէ բարւոքվում. անկարգութիւնները, անիշխանութիւնը դեռ շարունակվում են։ Հեռաւոր խուլ անկիւններում զանազան ինքնագլուխ և փոքրիկ բռնապետ խաներ հարստահարում, կեղեքում են ժողովուրդը, և նոյն իսկ հայերը, որոնց դիպչել զգուշանում էին առհասարակ բռնապետները առաջնորդի կամ հիւպատոսների միջամտութեան երկիւղից, նոյնպէս սկսել են ենթարկուել նրանց հարստահարութեան և կեղեքման, ինչպէս պատահեց Ղարադաղում, ուր մի քանի խաներ թալանեցին երկու հայ գիւղ, ծեծի և տուգանքի ենթարկեցին մի գիւղի քահանային և կոտորեցին մի քանի մարդկանց։ Այդպիսի խառնակ դրութեան ժամանակ անհրաժեշտ է առաջնորդի ներկայութիւնը, որպէս զի կարողանայ բողոքի ձայն բարձրացնել։

Առաջնորդի ներկայութիւնը անհրաժեշտ է և կենտրոնական դպրոցի հարցի վերջնական լուծման համար, որ մինչև այժմ անկախ է մնացել։ Որպէսզի կարելի լինի գրաւել նուիրատուներին՝ օգնելու այդ հիմնարկութեան զարգացման, անհրաժեշտ է, որ նա դրուի հասարակութեան և նուիրատուներին վստահութիւն ներշնչող պայմանների մէջ։ Որքան մեզ յայտնի է, այդ հիմնարկութեան առաջին հիմնական դրամագլուխը պէտք է լինի Զոհրաբեան կտակի գումարը, որ, երևի, կը յատկացուի այդ գործին։

Նոր և մխիթարական տեղեկութիւններ չունենք հաղորդելու Պարսկաստանի երկրորդ՝ Պարսկա-Հնդկաստանի թեմի մասին։ Առաջնորդ Այվատեան արքեպիսկոպոս, որի դէմ բողոք-

ներ կայրն, իբրև կուսակցականների ձեռքում գործիք եղած մի անձի, դեռ մնում է իր պաշտօնի մէջ և կը մնայ մինչև նոր կաթողիկոսի ընտրութիւնը, որին է պատկանում իրաւունքը՝ հրաժարեցնել Պարսկաստանի առաջնորդներին կամ ընդունել հրաժարականը և նոր ընտրութեան հրաման տալ։ Մնում է, որ այդ թեմի ժողովուրդը համբերութեամբ սպասէ. գուցէ Այվատեան արքեպիսկոպոսն ևս զգաստանայ և ըմբռնէ, թէ նա իր պաշտօնով կոչուած է ոչ թէ մի որոշ կուսակցութեան—որի շահերը տրամագծօրէն հակառակ են հայ ժողովրդի շահերին—ձգտումները իրագործել, այլ տարածել իր թեմի խեղճ ու թըշուառ ժողովրդի մէջ ուսումն, դպրոցներ, ընթերցարաններ, բարեկարգել եկեղեցիները։

Որքան էլ հայերն ունեն պարսկական մէջլիսում ներկայացուցիչ, բայց մի հատիկ ներկայացուցիչ մի ձայնի իրաւունքով՝ անկարող է պաշտպանել Պարսկաստանի համայն հայ ժողովրդի շահերը, ուստի թեմական առաջնորդները դեռ երկար ժամանակ անհրաժեշտ դեր ունեն կատարելու, իբրև հայ ժողովրդի ներկայացուցիչներ և ազգային վարչութեան նախագահներ։

Հակառակ տարածուած կարծիքի, թէ հայերի դերը Պարսկաստանում վերջացած պէտք է համարել, մենք այն կարծիքըն ունենք, որ պարսկահայ ինտելիգենցիան և հայ առևտրական դասը դեռ անհրաժեշտ օգուտներ կարող են տալ Իրանին, որ և իրանց հայրենիքն է, և դրանով նաև պարսկահայ ժողովրդին։ Ինտելիգենտ և կրթեալ հայերը, իբրև միջնորդներ Պարսկաստանի և Եւրոպայի միջև, կարող են դեր խաղալ պարսկական պարլամենտի և կառավարութեան կազմի մէջ, մանաւանդ որ պարսկական նոր կառավարութիւնը, նոր խնամակալ Նասր-իւլ-Միւլքի օրով, անշուշտ, ոչ մի խտրութիւն չէ դնելու իր մուսուլման և քրիստոնեայ հպատակների մէջ և հայրենիքին սպասաւորելու կոչելու է կարող և ձեռնհաս ոյժեր, առանց կրօնի և ցեղի խտրութեան։ Նասր-իւլ-Միւլքը, ինքն եւրոպական լուրջ կրթութիւն ստացած անձն, քաջ գիտէ, որ միայն ուսեալ և կրթեալ անձինք կարող են նպաստել մեծ և պատմական Իրանի վերածնութեան։ Նա արդէն իր հետ տարել է Պարսկաստան Եւրոպայից Յովհաննէս խան Մասեհեանին, ըստ ամենայնի մի ձեռնհաս պետական գործիչ և դիպլոմատ, որից չկարողացան օգտուել նախորդ կառավարութիւնները։ Յոյս կայ, որ այդ համակրելի հայ պետական գործիչը և դիւանագէտը կարողանայ իր հայրենիքին նշանաւոր ծառայութիւններ մատուցանել։

ՇԱՒԱՐՇ

# ՌՈՒՍԱԿԱՆ ԿԵԱՆՔ

## I

Ռուսական կեանքի մէջ վերջին ժամանակների ընթացքում տեղի ունեցած դէպքերը, որոնք վերաբերում են թէ արտաքին և թէ ներքին քաղաքականութեան, շատ նշանակալից են և բնորոշ։ Ամեն ինչ, կարծէք, տրամադրում է այժմ պնդելու, որ կառավարութիւնը ուզում է վերջ տալ կամ մինչև իսկ համարում է վերջացած պետական կեանքի անցողական շրջանն և այժմ հետամուտ է ակտիվ գործունէութեան թէ արտաքին և թէ ներքին քաղաքականութեան ուղիների վրայ։ Այդ տեսակէտից շատ կարևոր նշանակութիւն ունի այն վերաբերմունքը, որ ունեցաւ ներկայ սահմանադրական կառավարութիւնը դէպի Չինաստանը՝ պայմանագրի վերանորոգման առիթով, դէպի Մերձաւոր Արևելքի կնճռոտ և ամեն րոպէ բռնկելու պատրաստ կրետական և մակեդոնական խնդիրները. իսկ ներքին կեանքի մէջ կառավարութեան վերաբերմունքը համալսարանական յուզմունքներին, Պետական Դումայի գործունէութեան և այլ խոշոր խնդիրներին, որոնք դեռ ևս ոչ մի լուծում չեն ստացել և հոկտեմբերեան մանիֆէստի հրատարակման օրից մինչև օրս սպասում են իրանց հերթին։ Ինչպէս յայտնի է, քաղաքական վերջին դէպքերից ամենախոշորագոյնն և կարևորագոյնն էր՝ Պոտսդամեան տեսակցութիւնը, որի հետևանքն էր Ռուսաստանի և Գերմանիայի՝ երկու հարևան հզօր պետութիւնների՝ բարեկամական մերձեցումը, որը և ճանապարհ բացեց վերանորոգելու դիպլօմատիական բարեացակամ յարաբերութիւնները Աւստրօ-Ունգարիայի հետ, որոնք որոշ չափով խզուած էին բօսնիական երկիրների աննեկսիայի պատճառով։ Երկու հզօր հարևան պետութիւնների հետ աւելի ևս մերձենալով և վիճելի քաղաքական խնդիրները փոխադարձ համաձայնութեան և պարզաբանութեան նիւթ դարձնելուց յետոյ, ռուսական սահմանադրական կառավարութիւնը հերթական ներքին և արտաքին

կեանքի քաղաքական կարևորագոյն հարցերի և երևոյթների վերաբերմամբ նետեց իրան ակտիվ և վճռական գործունէութեան ուղին, որով յայտնի է կացուցանում քաղաքական աշխարհին, որ մինչև իսկ պատրաստ է, հարկ եղած դէպքում, ամենակտրական միջոցների դիմելու պետական շահերի պաշտպանութեան համար։

Այս ուղղութեամբ և ոգով է ներշնչուած այն վերջնագիրը, որ կառավարութիւնը ներկայացրել է չինական վայվուբուին սահմանային և առևտրական պայմանագրի ժամանակամիջոցի լրման պատճառով։ Ռուսական կառավարութիւնը պահանջում է վերանորոգել պայմանագիրը գրեթէ իր ամբողջութեամբ և խիստ ճշտապահօրէն գործադրել պայմանագրի կէտերը, հակառակ դէպքում կառավարութիւնը ձեռք կառնէ այն միջոցները, ինչ որ անհրաժեշտ կը համարէ այդ բանի համար։ Այս տեսակ՝ ուլտիմատումի բնոյթ կրող յայտարարութեան չինական կառավարութեան կողմից հետևեց բարեացակամ և խաղաղութեամբ ներշնչուած մի պատասխան, որ յոյս է տալիս ենթադրելու, թէ ռուս-չինական միջադէպը կունենայ խաղաղ վախճան հէնց երկու շահագրգռուած պետութիւնների համար ևս։

Միւս կողմից քաղաքական աշխարհը շատ հետաքրքրուած է պարզելու, թէ Մերձաւոր Արևելքի վերաբերմամբ ռուս կառավարութիւնը արդեօք հնարաւորութիւն ունի՞ արտայայտելու այնպիսի վճռականութիւն և ակտիվութիւն, ինչպիսին նա ցոյց տուեց Հեռաւոր Արևելքի վերաբերմամբ։ Այս դէպքում շատերը կասկածներ են յայտնում և երկմտում են, մանաւանդ այդ խնդրով չափազանց շահագրգռուածները՝ բալկանեան սլաւօն պետութիւններն և Յունաստանը, որոնց համար Կրետէն և Մակեդոնիան մահու և կեանքի խնդիրներ են։

Ահա թէ ինչու ներկայումս Բօլգարիան, Յունաստանն և բալկանեան այլ պետութիւնները ճգնում են զինուորական-պաշտպանողական դաշնադրութիւններով ապահովել իրանց՝ աւանդական-պատմական թշնամու՝ Թիւրքիայի դէմ, որովհետև Ռուսաստանի ակտիվ քաղաքականութիւնը Հեռաւոր Արևելքում, ինչպէս և 90-ական թուականներին, միշտ ստիպել է Մերձաւոր Արևելքի վերաբերմամբ լինել ամենախիստ պաշտպան բալկանեան status quo-ի քաղաքականութեան։

Ռուսաստանի քաղաքականութեան այս տեսակ ընթացքը վերագրում են Գերմանիայի ազդեցութեան, իբրև պօտսդամեան տեսակցութեան հետևանք։

Այս տեսակէտից շատ նշանակալից է այն որոշումը, որի

մասին լրագիրներում յայտարարուեց, թէ մօտ ապագայում կառավարութիւնը յետ է կանչելու իր զօրքերի մի մասը Պարսկաստանից։ Այս ևս մի նոր փաստ է կառավարչական ակտիվ գործունէութեան սահմանափակման Մերձաւոր Արևելքում և և առհասարակ եւրոպական քաղաքական ասպարէզում։ Ըստ իրևոյթին ճշտվում է Բիսմարկի յայտնած միտքը Ռուսաստանի քաղաքական կոչման մասին։ Ահա նրա խօսքերը. «Եւրոպայում Ռուսաստանը ոչինչ չունի անելու. այստեղ նա կարող է միայն վարակուել նիհիլիզմով և զոյնանման հիւանդութիւններով. Ռուսաստանի տեղը Ասիան է, որտեղ նա ներկայացնում է քաղաքակրթութիւն»։

## II

Ռուսական ներքին կեանքի խնդիրներից վերջին ժամանակները աղմուկ հանեց հնդկա-եւրոպական երկաթուղու կառուցման գործը, որի նպատակն է Հնդկաստանը Պարսկաստանի և Ռուսաստանի վրայով միացնել Եւրոպայի հետ, այսինքն ստեղծել անմիջական ցամաքային երկաթուղագծային հաղորդակցութիւն Հնդկաստանի և Արևմտեան Եւրոպայի միջև։ Այս միտքը և ծրագիրը բղխել է կառավարչական շրջաններից և բնորոշում է այն, որ ներկայ կառավարութիւնը այժմս հնարաւոր է համարում նաև հսկայական շինարարական ձեռնարկութիւնների իրականացումը, որով շօշափւում է համաշխարհային առևտրականութեան շահերը։ Ինչպէս և պէտք էր, աջակողմեան և կառավարչական շահերին հետամուտ եղող մամուլը ջերմ պաշտպան է հանդիսանում վերոյիշեալ նախագծին, իսկ ազատամիտ մամուլը և ռուս վաճառականութեան և արդիւնաբերութեան խոշոր ներկայացուցիչները դէմ են հնդկա-եւրոպական երկաթուղագծի կառուցման, համարելով այդ տեսակ գծի գոյութիւնը վնասաբեր ռուսական առևտրի համար։ Կառավարութիւնը յոյս ունի, որ այդ տեսակ երկաթուղագծի շահագործումը տրանզիտային պայմաններով մեծ շահ է բերելու գանձարանին. ռուս վաճառականութիւնը դէմ է, որովհետև շատ լաւ գիտէ, որ չէ կարող մրցել Պարսկաստանում և առհասարակ ասիական շուկաներում եւրոպական ապրանքների հետ, որոնք հեշտութեամբ մուտք կը գործեն այնտեղ հնդկա-եւրոպական երկաթուղագծի շնորհիւ։

Մեր կարծիքով՝ հայ վաճառականութիւնը ևս կը վնասուի

մեծապէս, եթէ այդ երկաթուղային նախագիծը իրականանայ, քանի որ ասիական շուկան, անմիջապէս մատակարարուելով եւրոպական գործարաններից հնդկա-եւրոպական երկաթուղու շնորհիւ, էլ կարիք չի ունենայ միջնորդի դեր կատարող վաճառականների, որպիսիներն են հայ առեւտրականները ասիական շուկաներում։ Այս ծրագրի իրագործումից շահուելու է միմիայն ասիական երկիրների ազգաբնակութիւնը, այսինքն սպառողը, որը կը ստանայ գերադաս յատկութիւններ ունեցող, այսինքն եւրոպական ապրանք։

Ներքին կեանքին վերաբերող երկրորդ կարեւորագոյն խնդիրն է ուսանողական յուզմունքները և համալսարանական կանոնաւոր կեանքի ընդհատումը դասադուլի պատճառով։ Ամեն մէկիս համար պարզ է, թէ ինչ վերաբերմունք ցոյց պէտք է տային գիտութեան և իսկական լոյսի ու ճշմարտութեան ծարաւի ուսանողութեան շահերին աջակողմեանները և նրանց մամուլը։ Սակայն ցաւալի է, որ մեր սահմանադրական կառավարութեան գործ դրած միջոցները համալսարանական խաղաղ, նորմալ կեանքը կանոնաւորելու համար՝ միանգամայն նման են և յիշեցնում են հին, նախկին ռէժիմի օրով գործադրուող միջոցները, որոնք, ինչպէս փորձից գիտենք, ունեցել են բոլորովին տարբեր ու հակադիր հետեւանքներ։ Այս եւս մի նոր փաստ է, որ մի աւելորդ անգամ եւս հաստատում է, թէ դեռ ոչինչ էապէս չէ փոխուել ու չէ փոխվում, ամենը դեռ եւս մնում է թղթի վրայ ձևի համար...

Երրորդ Պետական Դուման շարունակում է իր վերմիշելական գործունէութիւնը, սակայն նրանով ոչ ոք չէ հետաքրքրվում այժմ։ Ամեն տեղից լսում էք, թէ ինչ է լինելու չորրորդ Դուման, որ մօտիկ ապագայում կոչուելու է օրէնսդրական գործունէութեան։ Բոլոր նշանները ցոյց են տալիս, որ այդ չորրորդ Դուման լինելու է երրորդի արժանաւոր ժառանգը, աւելի աջացած և որի սնունդը լինելու է երրորդ Դումայի թողած վերմիշելեան ժանրուքը՝ փշուրները։

Փետրուարի 19-ին լրանում է Ռուսաստանի ճորտերի ազատագրութեան յիսուն տարին։ 1861 թ. փետրուարի 19-ին Ալէքսանդր II Կայսրի հրատարակած հրովարտակով վերացաւ Ռուսաստանում ճորտատիրութեան սիստեմը։ Ռուս գիւղացին ճանաչուեց ինչպէս ազատ, ինքնուրոյն և անկախ մի արարած, որ ինքն է իր բախտի տնօրինողը հանդիսանում և ոչ թէ, ինչպէս առաջ էր, վաճառքի ապրանք կամ կիրառութեան իր նրա համար, ում որ նա պատկանում էր, այսինքն կալուածատիրոջ։

Ինչպէս յայտնի է, ճորտերի ազատագրութիւնը հետեւանք էր այն նեղ կացութեան և ծանր պայմանների, որոնց պատճառեց 1855 թ. Ղրիմի անաջող պատերազմը Եւրոպայի դէմ։ Այդ պատերազմը բացեց ռուս հասարակութեան բանիմաց խաւերի աչքը, որոնք նախատեսում էին, թէ ուր է տանում ռուս ժողովրդին քաղաքական-վարչական այն սիստեմը, որը բնորոշվում է Նիկօլայեվեան անունով։ Եւ ահա Ալէքսանդր II Ազատարար կայսրը նախաձեռնեց մի շարք կարեւոր ռէֆօրմների, որոնք պէտք է մօտեցնէին Ռուսաստանը Եւրոպային և ծառայէին ռուս ժողովրդի առաջադիմութեան և բարեկեցութեան խնդրին։ Ահա այդ ռէֆօրմներից ամենախոշորագոյնը՝ ճորտերի ազատագրութիւնն էր, որի յիսնամեակը լրանում է փետրուարի 19-ին։ Ռուս գիւղացին այդ օրուանից ազատ շունչ առաւ, իրան մարդ ըզգաց և ոչ թէ մի իր ուրիշի համար։ Վերացաւ իսպառ մարդավաճառումը և կենդանի մարդկանց սրան-նրան նուիրաբերութիւն անելու կարգը Ռուսաստանում։ Սկսուեց ռուսական կեանքի կուլտուրական առաջխաղացումը և տնտեսական բարգաւաճումը և շարունակուեց մինչև 80-ական թուականները, երբ քաղաքական դերը նորից ստանձնեց ռէակցիան, որը և կասեցրեց ռուսական մտաւոր-տնտեսական առաջխաղացումը մինչև ռուս-ճապօնական պատերազմը և ռուսական յեղափոխութիւնը, որոնք նորից երևան հանեցին այն չարիքը, որ հասցրել էր գոյութիւն ունեցող րէժիմը, և այն վէրքերը, որոնք արդէն խոր կերպով խոցոտում էին ռուսական պետական սիստեմի օրգանիզմը։ Իսկ դրա բուժման համար հրատարակուեց հոկտեմբերեան մանիֆէստը։

ԿԱԼԽԱՍ

# ԱՐԵՒԵԼԱԳԻՏՈՒԹԻՒՆ, ԿՈՎԿԱՍԱԳԻՏՈՒԹԻՒՆ, ՀԱՅԱԳԻՏՈՒԹԻՒՆ

---

## ՊՐՈՖ. ՄԱՌՌԻ ՌԵՖԵՐԱՏԸ

Յունուարի 10-ին, Պետերբուրգում, Ռուսաց Հնագիտական Ընկերութեան նիստում, պրոֆէսոր Նիկոլայ Մառր կարդաց ռեֆերատ հայկական հինաւուրց կուլտուրական կենտրոնի՝ Անի քաղաքի ընդարձակ հնագիտական պեղումների հետեւանքների մասին։

1910 թուին ձեռնարկուեց 9-րդ հնագիտական հետազօտութեանը պրոֆ. Ն. Մառրի ղեկավարութեամբ։ Ահագին, անապատային, համարեա անմարդաբնակ տարածութեան վրայ կարճ ժամանակամիջոցում առաջ եկաւ մի ամբողջ՝ երբեմն եռուն առեւտրով ու մտաւոր կեանքով ապրող քաղաք՝ իր գեղարուեստի յուշարձաններով ու յիշատակարաններով, տաճարներով, փողոցներով, հրապարակներով, պատերով, բերդերի աշտարակներով, ջրանցքով, կացարաններով, արհեստանոցներով։

Վերջին պեղումները նուիրուած էին գլխաւորապէս քաղաքի գլխաւոր փողոցի ճանապարհի և ջուր հայթայթելու սիստեմի հետազօտութեան։ Բացուած է մի անբացատրելի շինուածք երկու աշտարակներով։ Շինութիւնը վերաբերում է X դարին նախ քան Քրիստոս։ Նրան կից գտնվում են անկման շրջանի յետագայ կառուցուածքներ։ Հետազօտուած են Կարսի դարպասները և քաղաքային պատերի մեծ մասը՝ իրանց դեկորատիվ զարդարանքներով, որոնց մէջ աչք է զարկում սվաստիկան։ Գլխաւոր փողոցի վրայ կատարուած են հիւրանոցի և մասնաւոր տների պեղումներ։ Հրապարակի վրայ բացուած են մզկիթի աւերակներ։ Գեղարուեստի և նիստ ու կացի գտնուած առարկաները չափազանց բազմաթիւ են։ Առանձնապէս

հարուստ է բուստաձև կնտուածքների բաժինը։ Այսպէս, ժողոված են 100-ից աւելի այսպէս կոչուած սղիկային անօթներ, որոնց, պրոֆէսորի կարծիքով, գործածելիս են եղել կոսմետիկական հեղուկ օծանելիքներ պահելու համար։ Գտնուած հայկական, պարսկական և արաբական լեզուներով արձանագրութիւնների մեծ ժողովածուն հարուստ նիւթ է տալիս գիտական հետազօտութիւնների համար։ Մետաղեայ աշխատանքների հետաքրքրական արհեստանոցը, որ պատկերացնում է տեխնիկայի դրութիւնը միջնադարեան հայկական քաղաքում, ցոյց է տալիս, ջրանցքի ուսումնասիրութեան հետ միասին, այն տեխնիքական նուաճումները, որ ժառանգած ունէր Հայաստանի յետագայ ազգաբնակութիւնը։

Վրաց եկեղեցու հետազօտութեան ժամանակ Անիում պեղումները տուին մի քանի նոր վրացական արձանագրութիւններ։ Նրանցից մինը, լաւ հետազօտուած, ներկայացնում է Վրաստանի կաթողիկոս Եպիփանի դիմումը վրացիներին և վերաբերում է 1218 թուին։

Հակիրճ տեսութեան մէջ դժուար է հաղորդել այն ահագին հնագիտական նիւթը, որ տուին Անիի 9-րդ պեղման աշխատանքները։ Անիի թանգարանը արագօրէն և նկատելի կերպով զարգանում է, գտնուած իրերի լուսանկարները հասարակութիւնը ուրախութեամբ գնում է։ Այցելուների թիւը, որոնց մէջ նկատվում են նաև օտարազգիներ, կրկնապատկվում է տարէ-տարի։ 1910 թուին նա հասաւ 2300 հոգու։

Վերջում ռեֆերենտը ցանկութիւն յայտնեց՝ շուտափոյթ լուծելու Անիում տեղական կրթական հաստատութիւն՝ Անիի հնագիտական ինստիտուտ հիմնելու հարցը։ Նրա նպատակն է լինելու՝ բացառապէս բազմակողմանի կերպով հետազօտել Անին ուսումնական ջանքերով, որովհետև այդ հետազօտութիւնների այնպիսի լայն զարգացման մէջ, ինչպիսիին հասել են ներկայումս Անիի պեղումները, եզակի ջանքերը անբաւական են։

# ՄԱՏԵՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

---

Rapport sur une Mission scientifique en Arménie Russe et en Arménie Turque (Juillet-Octobre 1909), par M. Frédéric Macler, Paris, Imprimerie Nationale, 1911.

---

*(Տեղեկագիր մի գիտնական միսիայի մասին Ռուսական Հայաստանում և Թիւրքական Հայաստանում (յուլիս-հոկտ. 1909 թ.), Ֆրեդերիկ Մակլէրի, Պարիզ, Ազգային Տպարան, 1911 թ.)։*

Ֆրանսիական ժողովրդական լուսաւորութեան մինիստրութիւնը 1909 թ. պաշտօն կամ միսիա յանձնեց պ. Ֆրեդերիկ Մակլէրին ճանապարհորդել Հայաստանի երկու մասերը՝ Ռուսական և Օսմանեան՝ և կատարել գիտնական ու գրական ուսումնասիրութիւններ։ Կատարելով այդ միսիան 1909 թ. յուլիս-հոկտեմբեր ամիսների ընթացքում, այցելելով Անդրկովկասը, Թիւրքաց Հայաստանը, պ. Ֆ. Մակլէր ներկայացրեց մինիստրութեանը մի ընդարձակ տեղեկագիր իր կատարած ուսումնասիրութիւնների մասին։ Ահա մինիստրին ներկայացուած այդ տեղեկագիրն է, որ այժմ հրատարակուել է բազմաթիւ նկարներով։ Յարգելի գիտնականը սկսում է իր ուսումնասիրութիւնը Վիէննայի Մխիթարեանների վանքով, զբաղվում է այդտեղ գտնուած մի քանի ձեռագիրներով. ապա Վիէննայից Թիֆլիսի վրայով ուղղակի դիմում է Էջմիածին, ուր շնորհիւ հանգուցեալ Մատթէոս II Կաթողիկոսի սիրալիր ընդունելութեան՝ հնարաւորութիւն է ունենում և ամէն տեսակ դիւրութիւն ծանօթանալ Էջմիածնի մատենադարանի գրական գանձերի հետ, ուսումնասիրել ձեռագիրները, այցելել շէն և աւերակ վանքերը։ Իր տեղեկագրի մէջ նա մեծ և լայն տեղ է տուել Էջմիածնի մատենադարանի ձեռագիրների, Զուարթնոց վանքի պեղումների նկարագրութեանը։ Նա մեծ գովասանքով է խօսում է միջի այլոց և գիտնական հայր Մխաքանի մասին։

Վերադառնալով Էջմիածնից Թիֆլիս, մնալով այստեղ մի

քանի ժամանակ և ծանօթանալով հայ գրական և մտաւորական, բեմական աշխարհի ներկայացուցիչների հետ, Ֆ. Մակլէր անցնում է Բաթումի վրայով Տրապիզոն, Կիրասունդ, Օրդու, Սամսօն, Բաֆրա և ապա Կ. Պօլիս, ուր նոյնպէս ծանօթանում է հայ գրական, բեմական, մտաւոր և եկեղեցական աշխարհի ներկայացուցիչների հետ, որոնց թւումն և նախկին պատրիարք Օրմանեանի հետ, որի կարևոր ֆրանսերէն երկասիրութիւնը հայոց եկեղեցու մասին գնահատելով՝ վերցնում է տանելու Պարիզ և այդտեղ տպագրելու։ Կ. Պօլսում ևս նրա գլխաւոր գործը լինում է ծանօթանալ Անտօնեան հայրերի մատենադարանի հայ ձեռագիրների հետ։

Հեղինակը, խօսելով Թիֆլիսի հայ մամուլի և գրողների մասին, ի միջի այլոց հետևեալն է ասում.

«Նախկին մեծ Հայաստանի Արարատեան մասը պարսկական տիրապետութիւնից Ռուսաստանի իշխանութեան ներքոյ անցնելուց յետոյ (1828 թ.), մի նոր դարաշրջան բացուեց Կովկասի հայոց գրականութեան համար. Եւրոպայում ճանաչում են Աբովեանի, Ս. Նազարեանի, Րաֆֆու, Պռօշեանցի, Գամառ-Քաթիպայի, Մուրացանի, Աղայեանցի, Շիրվանզադէի և այլոց անունները։ Բացի վերջին երկուսից, այդ գրողները մեռած են այժմ. բայց նրանք թողել են տևական գործ. նրանք, իրանց գրուածներով, բարձրացրել են իրանց հայրենակիցների բարոյական և մտաւոր մակարդակը, նրանք նպաստել են պատրաստելու հայ ժողովուրդը ազատութեան մի նոր դարաշրջանի։

«Ազգային հռչակաւոր բանաստեղծ Գամառ-Քաթիպան (Պատկանեանի գրական անունը) մի դպրոց է ստեղծել և այժմեան բանաստեղծների մէջ, որոնք նրանից յետոյ գրիչ վերցրին, կարելի է յիշել Յ. Յովհաննիսեանի, Յովհ. Թումանեանի, Աւ. Իսահակեանի, Ա. Ծատուրեանի և տ. Շուշանիկ Կուրղինեանի անունները։

«Արձակ գրողների մէջ, որոնք գրում են Րաֆֆու ստեղծած ժանրով, կը յիշենք միայն գլխաւորներին—Շիրվանզադէ, Աւ. Ահարոնեան, Վ. Փափազեան, Շահրիար (գրական անուն Հ. Առաքելեանի), Լէօ, Նամալեան (գրական անուն Քալանթարի), Ատրպետ, Նար-Դոս։

«Այս գրողների մեծ մասը անցել են «Մշակ» լրագրի միջոցով, ուր մի անգամ հռչակ ձեռք բերելուց յետոյ՝ սկսել են առանձին հատորներ հրատարակել։

«Դրամատուրգների մէջ խօսվում է Շիրվանզադէի մասին,

որ գրում է հայկական սիւժէտներ եւրոպական ձեւով. Աբէլեան (Ալէքսանդր) նկարագրում է նամանաւանդ ժողովրդի կեանքըն

«Առաջին հայ արժէքաւոր դրամատուրգը, ես կասէի՝ հայկական թատրօնի հայրը Կովկասում, Գաբրիէլ Սունդուկեանցն է։ Մեզ համար մի պարտականութիւն և հաճոյք էր այցելել պատկառելի ծերունուն, որ, աւելի քան 80-ամեայ, աշխատում է մի նոր պիէսայի վրայ, որի հասոյթը յատկացուելու է Ադանայի նորագոյն կոտորածի զոհերի օգտին։

«Հաչակաւոր վարպետը (maitre) բարեհաճում է պատմել մեզ մի քանի յիշողութիւններ իր հեռաւոր երիտասարդութիւնից...»։

Ապա Ֆ. Մակլէր, բերելով Գ. Սունդուկեանցի կենսագրութիւնը և պատմածը, առաջ է բերում, «Մշակից» քաղելով, նրա նոր պիէսի («Սէր և Ազատութիւն») բովանդակութիւնը։

Առ հասարակ պ. Մակլէրի այդ տեղեկագիրը մի բազմարդիւն և գնահատելի ու կարևոր աշխատութիւն է հայագիտութեան և հայկական հնագիտութեան մասին և պատիւ է բերում թէ ֆրանսիական կառավարութեան, որ շարունակ հարստացնում է արևելագիտութիւնը նորանոր գիտնական միսսիաներով, և թէ իրան՝ հեղինակ Ֆ. Մակլէրին, որ կարողացել է այնքան արդիւնաւոր կերպով ի կատար ածել իր միսսիան։

Հ. Ա.

Խմբագիր-հրատարակիչ Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

Տպարան «Է Փ Օ Խ Ա» Գանօվսկայա № 3.

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ

ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆԸ

## ՆՈՐ ԴՊՐՈՑ

*Ուսուցչական Միութեան օրգանի*

*Ներկայ 1911 թուականից «ՆՈՐ ԴՊՐՈՑԸ» պէտք է հրատարակուի իբրև շաբաթաթերթ։ Առայժմ կը հրատարակուի երկու շաբաթը մի անգամ կրկնակի ծաւալով։ «ՆՈՐ ԴՊՐՈՑԸ» նուիրուած կը լինի տեսական ու գործնական մանկավարժութեան, տնային դաստիարակութեան, հայ և օտար դպրոցական կեանքի և ուսուցչական կարիքների ուսումնասիրութեան, նորագոյն կարևոր ուղղութիւններն էլ ի նկատի ունենալով։*

*Տարեկան բաժնեվճարը Միութեան անդամների համար 2 ր.*
*» » ոչ անդամների համար 4 ր. —*
*Անդամների համար կէս տարուանը 1 ր. 25 կ.*
*Ոչ անդամների համար . . 2 ր. 50 կ.*

*Խմբագրութեան կազմը*

*Աբեղեան Ա., Աբովեան Ս., Ղազարեան Գ., Յարութիւնեան Իս., Տէր-Միրաքեան Յ.։*

*«ՆՈՐ ԴՊՐՈՑԻՆ» աշխատակցում են՝ պ. պ. Աղայեան Ղ., Աբէլ, Աղաբաբ Յ., Աբեղեան Ն., Ալիխանեան Յ., Բաբասեան Յ., Գեանջեցեան Ա., Գիւլալեան, Դուրգարեան Մ., Եաղուբեան Կ., Թորոսեան Ս., Լիսիցեան Ս., Խզմալեան Թ., Կշեռք, Մատէնճեան Մ., Մանուկօղլեան Ս., Միրիանեան Կ., Մուսայէլեան Հ., Յովհաննիսեան Պ., Յովհաննիսեան Յ., Յովակիմեան Հ., Նազարեան Ս., Զիլինկարեան Ա., Ռաշմաճեան Տ., Սարգսեան Ն., Ստամբօլցեան Ա., Ստեփանեան Յ., Վարդանեան Գ., Տէր-Գասպարեան Ս., Տէր-Գրիգորեան Ս., Տէր-Մինասեան Ս., Տէր-Յակոբեան Յ., Տէր-Պօղոսեան Ա., Քաջբերունի Ռ.։*

*Հասցէն՝* Вельяминовская № 8.

ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

ՆԵՐԿԱՑ 1911 ԹՈՒԱԿԱՆԻ

II ՏԱՐԻ „ԱՐՕՐ" II ՏԱՐԻ

# ԸՆԴՀԱՆՈՒՐ-ԳՐԱԿԱՆ, ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ, ԳԻՏԱԿԱՆ, ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԵՒ ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ

## Ա Մ Ս Ա Գ Ի Ր

«ԱՐՕՐԸ» հրատարակուելու է Թիֆլիսում խմբագրութեամբ Հ. Առաքելեանի և աշխատակցութեամբ ռուսահայ, թիւրքահայ և պարսկահայ գրողների։

«ԱՐՕՐԻՆ» աշխատակցելու են՝

Ալպօյաճեան Ա., Աթանասեան Ա., բժշկ. Աղասարեան Բ., Ատրուշան, բժշկ. Արծրունի Վ., Առաքելեան Արշակ, Ա. Թաբէգեան Մ., Բաբգէն եպիսկոպոս Կիւլէսէրեան, Բաշալեան Լևոն, Բաշինջաղեան Գ., Բաբայեան Խ., Գասպարեան Յարութիւն, դօկտոր Գրէնֆիլդ Ջէմս, Դանիէլեան Ղ., Դը-Գուբերնատիս Անջէլլօ, սենատոր (իտալական պրոֆէսօր), Եզեկեան Ա., Եսայեան Ս., Էմմանուէլ ք. Նազարեան., Թէքէեան Վ., բժշկ. Թիրեաքեան Յարութիւն խան, Խանազատ Ռ., Խուրշիդ, Կալխաս, Կրասիլնիկեան Կ., Ղուլեան Ս., Մալխասեան Ս., Մալխազեան Ա., Մակլէր Ֆ. (ֆրանսիացի հայագէտ), Մեսրոպ ք. Մելեան, Յարութիւնեան Ի., Նաթանեան Միք., Նազարէթեան Ա., Նամալեան, բժշկ. Շահբազեան Ա., բժշկ. Շիխեան Ա., Շահրիար, Չալխուշեան Գ., Չախմախսազեան Յ., Սարուխան Ա., Սուրխաթեան, Սամուէլեան Խ., Սպէնդիարեան Յ., պրոֆէսօր Վեսելօվսկի Ի., Տէր-Մինասեան Ե., Րօֆֆօր Ստ., Քալանթար Ա., Կարա-Դէրվիշ։

«ԱՐՕՐԸ» ձգտելու է դառնալ հանրամատչելի, ժողովրդական ամսագիր ամենքի համար, տալ հայ ժողովրդին առողջ, թարմ մտա-

ւոր և հոգևոր սնունդ, դիտել հայկական իրականութիւնը և առանց հաշտուելու նրա հետ, անդադար պայքարել, կռուել գիտութեան և գեղարուեստի միջոցով ստորութեան, աղտեղութեան հետ, որոնցով այսօր համակուած է հայկական կեանքը։ Վերածնութիւն հայկական կեանքի, մտաւոր և բարոյական — ահա «ԱՐՕՐԻ» ձգտումներից մինը։ Ժողովրդականացումն գիտութեան — ահա «ԱՐՕՐԻ» մի այլ ձգտումը։ Սերմանումն հայ ժողովրդի մէջ համամարդկային գաղափարների, խաղաղասիրութեան, եղբայրական և մարդկային համերաշխութեան — ահա «ԱՐՕՐԻ» երրորդ ձգտումը։

«Արօրը» տպագրելու է ամեն մի համարում գոնէ երկու ամբողջական յօդուածներ՝ գլխաւորապէս կենսագրական և գիտական բովանդակութեամբ, որոնցից բաժանորդները կարողանան կազմել առանձին բրօշիւրներ և այդպիսով, տարվայ ընթացքում, կունենան գոնէ 24 ՀԱՏ ԳՐՔՈՅԿՆԵՐ։

Կամենալով հնարաւորութիւն տալ Թիւրքահայ և արևմտեան հայ գրողներին մասնակցել «Արօրին» և դրանով գրական ու մտաւոր սերտ յարաբերութիւններ ստեղծել արևելեան և արևմտեան հայ գրական գործիչների միջև, «Արօրը» հրատարակուելու է հայկական հին, այն է ընդհանուրից ընդունուած ուղղագրութեամբ։ Սակայն նրա էջերը բաց են լինելու և Վ-ի ուղղագրութիւնը քարոզողների առաջ։

«Արօրը» աշխատելու է ասպարէզ քաշել երիտասարդ, թարմ, սկսնակ ոյժերը և ղեկավարել նրանց գրական գործունէութիւնը։

«Արօրի» բաժանորդագինն է «Մշակի» բաժանորդների համար 4 ր.։ Ոչ-բաժանորդները վճարում են 2 ր. աւելի։

Դրամ և թղթակցութիւն ուղարկել այս հասցէով

Тифлисъ, редакція журнала „АРОР“.

Tiflis. Rédaction de la revue arménienne «Aror».

Թիֆլիս, «Արօր» ամսագրի խմբագրութիւն

Խմբագիր-հրատարակիչ՝ Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

# ԱՐՕՐ

## ՄԻԱՄՍԵԱՑ ՀԱՆԴԷՍ

ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՐԱԿԱՆ,
ԳԻՏԱԿԱՆ-ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ
ԵՒ ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ

№ 2—3

II ՏԱՐԻ

1911

ԹԻՖԼԻՍ

## ՓԵՏՐՈՒԱՐ-ՄԱՐՏ

### ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

էջ

Գրական
ԳԻՏԱԿԱՆ
Հասարակական-
ՔԱՂԱՔԱԿԱՆ
խաղաղասիր
ՀԱՆԴԷՍ

# ԱՐՕՐ

ԵՐԿՐՈՐԴ տարի
ԹԻՖԼԻՍ
1911 թ.
ՓԵՏՐ.-ՄԱՐՏ
№ 2—3

## ՄԻ ԵՐԵԿՈՅԹԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

*(Բեկուած սրտի յիշատակարանից)։*

---

*Վաղուց, շատ վաղուց էր այս։ Դպրոցական երկու ընկերներ էինք՝ սիրով, իրար արևով երդուող, իրար համար կեանք չխնայող ընկերներ։ Դպրոցն աւարտելուց յետոյ կեանք մտանք՝ միևնոյն սիրով կապուած, միևնոյն գաղափարներին ծառայելու։ Բայց մի դէպք ստիպեց մեզ բաժանուել՝ իրար հետ չպատահելու պայմանով։ Հեռացել էինք իրարից թէ տարածութեամբ և թէ մտածողութեան եղանակով ու ձգտումներով։ Տարիներ էին անցել։ Երկար ժամանակ բացակայելուց յետոյ մի ամառ այցելեցի հայրենիքս։ Սենեակս մտնելով՝ առաջին բանը, որ աչքիս ընկաւ, գրասեղանիս վրայ ընկած մի հաստ ծրար էր՝ իմ հասցէով կնքուած։ Պատուիրուած էր վերադարձիս ինձ յանձնել։ Ծանօթ գիր էր. նախկին ընկերոջիցս։ Տատանվում էի բանալու, բայց մի ներքին ոյժ առաջ մղեց ինձ, և ես, համարեա ակամայից, պատռեցի ծրարը։*

*Մի փոքրիկ տետր էր՝ շուտափոյթ ձեռքով գրուած։ Իմ հասցէին ոչինչ չկար, այլ մի պատմութիւն էր, որ բերում եմ ստորև։*

---

*Դարձեալ Նոր տարի էր. ցուրտ ձմեռ. երկիրը ձիւնի հաստ շերտով էր ծածկուած, որի վրայից ազատ փչող սառը քամին իր սարսուռ ազդող վզզոցով մի աւերուած երկրի վերջին հեծկլտանքներն էր բերում․․ .*

Այդ օրը գիւղի դպրոցում առաջին անգամ տօնածառ պիտի լինէր։ Մինչդեռ ես զբաղուած էի տօնածառը զարդարելով՝ աշակերտները խումբ-խումբ գալիս, զանազան հարցեր էին առաջարկում։ Մանաւանդ հետաքրքիր էին Ա. բաժանմունքի փոքրիկները. այդ չարաճճիները փոքրիկ ուլիկների պէս անդադար թռչկոտում էին շուրջս և հարցնում, թէ երբ պիտի վառուի տօնածառը, միաժամանակ կրկնում և իրանց սերտած փոքրիկ ոտանաւորները։ Ես վերջին անգամ նրանց ուղարկեցի տուն՝ պատուիրելով ժամը 5-ից վաղ չգալ։ Մինչև իմ դպրոցից դուրս գալը՝ նրանք մի երկու անգամ էլ եկան. վերջին անգամ նրանց ճանապարհեցի լաւ՝ պատուիրելով երեկոյեան ժամերգութիւնից վաղ չգալ։

Գիւղացիք խումբ-խումբ ժողովվում էին դպրոց։ Երբ արդէն դպրոցի միակ դասարան-դահլիճը լիքն էր հասարակութեամբ, վարագոյրը բացուեց։ Ամբողջ դահլիճը թնդաց 50 երեխաների հնչիւն ձայնով՝

Մեր հայրենիք թշուառ, անտէր,
Մեր թշնամուց ոտնակոխ,
Իր որդիքն արդ կանչում է
Հանել իր վրէժ, քէն ու ոխ...

Հասարակութիւնը, կարծես դիւթական գաւազանի շարժումով, լուռ ու գլխաբաց ոտքի կանգնեց։ Բեմի մի կողմում վառվում էր տօնածառը։

Գլխաբաց ու լուռ կանգնած գիւղացիները, պլպլացող տօնածառը և երեխաների հնչուն երգը մի րոպէ ինձ մոռացնել տուին իրականութիւնը. որոշուած երեք տունը երգելուց յետոյ՝ մի երկու րոպէ ես վարանում էի ուրիշ բան սկսել, վախենալով խանգարել խորհրդաւոր վայրկեանը։

Մէջ ընդ մէջ երգում էին, արտասանում ոտանաւորներ։

Երեկոյթը վերջացաւ։

Երեխաների հրճուանքին չափ չկար. երեկոյթի վերջում նրանք կրկին շրջապատեցին տօնածառը և սկսեցին պտտել նրա շուրջը։

Հասարակութիւնը ցրուեց. լսվում էին ուրախ խօսակցութեան ձայներ, իսկ աւելի հեռուից՝ մանկական խմբերգի երբեմն ուժեղ, երբեմն թոյլ հնչիւնները.

Երնէկ թէ այս Նոր-Տարին
Վերջ տար...

Վերջին ճրագը հանգցրի և ծառայի հետ դուրս եկայ։

*Դրսում անթափանցելի խաւարն աւելի ևս խտացել էր շնորհիւ մշուշի. ձիւնը, ինչպէս սառցի փոքրիկ կտորներ, ցըրւում էր այս ու այն կողմ մերթ ընդ մերթ վզզացող քամին։ Ցուրտ էր, սաստիկ ցուրտ։*

*Նոր էի ոտքս սանդուղից ցած դրել, երբ լսեցի մի աղիողորմ ձայն, որը թէ սթափեցրեց ինձ և թէ մի տեսակ սարսափ ազդեց այդ սարսռեցուցիչ խաւարի մէջ. կարծեմ այդ ազդեցութեան տակ էր, որ մի քայլ արի դէպի յետ։*

*—Վարժապետ ջան, մըզի մի ճար...,—կրկնուեց դողդոջուն ձայնը, և միաժամանակ իմ առաջ պատկերացան երկու սև ստուերներ այդ մթութեան մէջ։*

*—Ո՞վ էք,—հարցրի ես։*

*—Հայաստանցի ենք, ոտայդ հողին ղուրբան. մի ճար...,—արտասանեց նրանցից մէկը՝ ցրտից դողացող ձայնով։*

*Երկար բացատրութիւններն աւելորդ էին. ամեն բան հասկանալի էր. ես քայլերս ուղղեցի դէպի բնակարանս՝ պատուիրելով նրանց էլ ինձ հետևել։*

*Սենեակիս մէջ նոր սկսեցի դիտել հիւրերիս։*

*Նրանցից մէկը 60 տարեկանի մօտ՝ սպիտակ միրուքով ու մազերով, որոնք խճճուած, կարծես, իրար էին կպած մի ինչ-որ մածուցիկ հիւթի շնորհիւ, կնճիռներով ակօսուած լայն ճակատով, խամրած աչքերով, կորացած մէջքով և դողդոջուն ձեռներով մի ծերունի էր։ Նա փաթաթուած էր պատառոտած վերարկուի մէջ, որի մաշուած տեղերից երևում էին երբեմն մերկ մարմնի մասերը. մի ոտին հին կրկնակօշիկ, միւս ոտին՝ պարսկական «ճամանի» ձևով կօշիկ՝ առանց կուլպաների։ Միւսը երիտասարդ էր՝ կարմիր հնացած ֆէսով, նոյնպէս պատառոտուն հագուստներով, որոնք իրանց նախկին ձևը վաղուց կորցրել էին. վերևից հագած ունէր հնամաշ «քէզախիկ». Նա կաղում էր։*

*Նրանք հանեցին կօշիկները, ձիւնը թափ տուին, սրբեցին և իրանց ոտների ձիւնը և տեղաւորուեցին վառարանի շուրջը, որն սկսեց մի հաճելի ջերմութիւն սփռել շուրջը. իսկ թէյը շուտով պատրաստուեց։*

*Թէյից յետոյ հետաքրքրուեցի նրանց գլխի անցածով։*

*Երկար չէր այն։ Նրանք Վանին մօտիկ գտնուած գիւղերից էին. երբ Վանում կոտորածն սկսուեց, շրջակայ քիւրդերը՝ միացած Թիւրք-բաշիբօզուկների հետ՝ յարձակուեցին գիւղերի վրայ, աւարի ու կրակի մատնեցին ամեն բան, շատերին սպանեցին, իսկ մանուկներին կիսամեռ ձգում էին հացահատիկ-*

ների դատարկ հորերի մէջ, որտեղից «մեր ճժեր-բժերու ձայնն էինք լսում»—յուզուած աւելացրեց ծերունին։ «Մենք պէտք է սովամահ լինէինք, կամ զոհ գնայինք քիւրդի սրին. երկու դէպքումն էլ մահն անխուսափելի էր։ Արիւն-արցունքով թողեցինք մեր աւեր վաթանը, մեր քանդուած օջախը և դիմեցինք դէպի ռուսի հող։ Սահմանի մօտ վրայ հասան քիւրդերը, մեր վերջին հագուստը հանեցին, իսկ մի քանիսին հեռուից հրացանազարկ արին. Ամրօս էլ այդտեղ մնաց»—չոր հեկեկանքով աւելացրեց ծերունին։

Սենեակում տիրել էր խոր լռութիւն. միայն ծերունու խոր հառաչանքներն էին, որոնք՝ միախառնուելով վառարանում վառուող կրակի ճարճատիւնի հետ՝ մերթ ընդ մերթ լսվում էին, իսկ երբեմն էլ դրսում մռնչացող բուքը, որ զարկում էր պատուհանին ու յետ նահանջում նոյն ոռնոցով…

Ես ընկել էի մի տեսակ ինքնամոռացութեան մէջ. փոխադրուել էի արհաւիրքների աշխարհը և, կարծես, լսում էի խողխողուողների վերջին հնչիւնը, կանանց ու երեխաների սրտապատառ աղաղակները ու աչքովս տեսնում տների փլուելը…

*
* *

Որքան այդ դրութիւնը շարունակուեց, չեմ յիշում։ Երբ մտածութիւններիցս ուշքի եկայ, նոյն լռութիւնն էր տիրում սենեակում, նոյն բուքն էր դրսում մռնչում, իսկ կրակը վաղուց հանգել էր. լսվում էր միայն հիւրերիս մեղմ շնչառութիւնը. Նրանք կծկուել էին վառարանի մօտ ու կազմել մի-մի մսի գունդ։

Ես աչքս սևեռել էի այդ մսի գնդերին. իսկ այդ միջոցին, ո՜ սարսափ, զգում էի, որ մի տեսակ կատաղութիւն էր գալիս վրաս։

Ես այդ ժամանակ թղթակցում էի մի հայերէն թերթի. փորձեցի ստացածս տպաւորութիւնը գրի անցկացնել։ Ձեռս դողում էր, և ես մեծ ջանք գործադրեցի գրիչն ամուր պահելու ձեռքումս. սակայն հէնց առաջին բառը գրելիս՝ գրիչն երկու կտոր եղաւ ափիս մէջ։ Մի անհասկանալի բան աւելի և աւելի բռնկվում էր իմ մէջ և կուրծքս ճնշում. ես ճիգ էի գործում տեղս հանգիստ մնալու, բայց մի ներքին ույժ ինձ առաջ էր մղում ու ամբողջ ջղերս լարում… Իմ մէջ մի անսովոր բան էր կատարվում. մի բան, որ նման էր և՛ գժիւթ, և՛ անսովոր կատաղութեան։ Զգիտեմ՝ ինչպէս ձեռքս ընկաւ ջրի բաժակը, որն ամբողջ թափով զարկեցի յատակին։ Բաժակը փշուր-փշուր ե-

*զաւ և կոտրուելու ձայնից ժխի գնդերը միմիայն փոքր ցնցուեցին ու դարձեալ շարունակեցին խամփացնել...*

*Սենեակի օդը ճնշում էր ինձ. ես և՛ սաստիկ տաքութիւն էի զգում, և՛ դողում էի ամբողջ մարմնով. ինձ ազատ օդ էր հարկաւոր. և առանց երկար մտածելու՝ հագայ վերարկուս և դուրս եկայ փողոց...*

*Խաւար էր կատարեալ. քամին մռնչում էր և ձիւնը ցրում այս ու այն կողմը։ Մի ներքին ույժ ինձ շարունակ առաջ էր մղում դէպի բաց դաշտ, ուր ոչ մի պատուար չկար քամու կատաղի վազքի առաջն առնելու։ Մի կողմից ձիւնն էր թափվում վրաս ու քամու թափից զարկում երեսիս, միւս կողմից քամին էր հարուածում. իսկ ես քայլում էի շարունակ՝ հալածուած մի աներևոյթ ույժից դէպի խաւար անյայտութիւնը, որտեղից աւելի ուժեղ էր լսվում քամու մռնչոցը, որտեղ քամին, ձիւնն ու խաւարը՝ իրար խառնուած՝ մի սոսկալի դժոխք էին ներկայացնում...*

*Լուսաբացին էր, երբ ես յոգնած և ուժասպառ վերադարձայ, բայց ո՛չ առաջուայ նման, այլ միանգամայն ուրիշ մարդ դարձած...*

*Այնուհետև իմ սովորական կեանքն ու զբաղմունքը դադարեցին ինձ գրաւելուց. այլ ևս մանուկներն ու դպրոցը ինձ չէին հետաքրքրում. ես ձգտում էի անվերջ կռուի. ինձ պատերազմ էր հարկաւոր... Ինձ գրաւում էին բարձրաբերձ լեռների գագաթներին ճայթող կայծակը, երկնքի անհունութեան մէջ լսուող ամպրոպի հարուածը, բուք-բորանի խելագար ոռնոցը և... հրացանների որոտը... Երբ կայծակն էր փայլատակում, երբ որոտն էր թնդում, երբ մրրիկն էր փոթորկում կամ երբ հրացանի գնդակն էր վզզում, ես անզուսպ և խելառ ցանկութեամբ դիմագրաւել էի ցանկանում նրանց հարուածներին։ Այդ ժամանակ սիրտս ուռչում էր, դադարում էր մտածողութիւնս, և հոգիս, միայն հոգիս էր, որ անյաղթելի թափով ինձ առաջ էր մղում, առաջ, դէպի կռիւ...*

* * *

*Եւ ես դարձայ զինուոր...*

*Երկիւղը գոյութիւն չունէր ինձ համար. ես ցանկանում էի թշնամու իմ դէմ արձակած գնդակը տեսնել աչքովս և այնպէս մեռնել. ես ուզում էի շօշափել շիկացած գնդակը եռուն կրծքիս խորքում. ես հաւատացած էի, որ նա ինձ մահ չէր պատճառի...*

Բայց ինձ կռիւ էր պէտք, արիւնալի կռիւ...

Եւ հասաւ ինձ համար ցանկալի ժամը։

Կեանքի և մահուան կռիւ էր սկսուած. օրեր ու շաբաթներ սոսկալի կոտորած էր տեղի ունենում մեր և թշնամու շարքերում։ Ես անդադար անցնում էի այն շարքերը, որոնց վրայ աւելի շատ էին տեղում թշնամու գնդակները։ Ամեն տեղ համարւում էին ինձ անվրէպ խփող ու կատաղի կռւող. թշնամին սովորում էր, երբ կռուի սաստկացած ժամանակ ես դուրս էի թռչում պատնէշի ետևից և բաց դաշտում կուրծքս ու ճակատս դէմ տալիս իր գնդակներին, գետին տապալում այն յանդուգն զինուորին, որ մարմնի որևէ մի մասը ցոյց էր տալիս։ Իսկ ես շարունակ մնում էի անվնաս՝ ինձ վրայ արձակուած տեղատարափ գնդակների միջին։

Ինձ այնուհետև կախարդուած և անխոցելի համարեցին։

Երկրորդ օրն էր՝ մեր գծի վրայ տեղի էր ունենում կատաղի ճակատամարտ. մեր ճակատներն իրարից շատ մօտ էին, այնպէս որ երբեմն շատ պարզ իրար տեսնում էինք։

Նոր էր վերադարձել մեր՝ հանգստի գնացած տասնեակը, երբ վճռեցինք մի ուժեղ գրոհով դուրս քշել թշնամուն իր պատրաստարանից։ Պահանջեցի տասն հոգի ես, և կռիւը նորոգեցինք։ Ինչպէս երևում էր, մեր թշնամին էլ էր օգնութիւն ստացել ու նոր գիրքեր գրաւել, որովհետև նոյն տեղերից գնդակներ էին տեղում մեզ վրայ։

Լուսաբաց էր. գարնանային առաւօտ։ Մենք կռւում էինք մի հովտում. մեր թիկունքից ու աջ կողմից բարձրանում էին հսկայական գագաթներ, որոնք դեռ ևս թաղուած էին առաւօտեայ մշուշի մէջ. սառն հովը շոյում էր մեր դէմքը, իսկ ծագող արևի շեշտակի ճառագայթները նոր թափով ու եռանդով լցնում մեր հոգին. և երբ աչքներս դարձնում էինք դէպի՝ մեզ շրջապատող այն հպարտ ուղղաձիգ լեռներն ու գագաթները, մենք էլ հպարտանում, մի-մի անյաղթելի սար էինք դառնում. իսկ համազարկերի արձագանքների անվերջանալի թնդիւնները, որպէս մարտակոչի փողեր, մեզ առաջ մղում...

Մինչդեռ նոր պատուէրներ էի տալիս տասնեակներիս, յանկարծ թշնամու համազարկերի միջից լսուեց մի գիլ ու անոյշ մեղեդի. ես հրամայեցի հրացան չպարպել և ամբողջովին ուշադրութիւն դարձած լսում էի երգը։ Երբ ես ամբողջ հասակով կանգնել, ձեռքով արգելման նշան էի անում, թշնամու շարքերից ինձ նկատեցին, և մի քանի գնդակներ սուլեցին գլխավերևովս ու ականջիս մօտով. բայց այնտեղ էլ դադարեց-

*րին հրացանաձգութիւնը. և միայն երգն էր, որ քանի գնում՝ այնքան ուժեղանում և կաշկանդում էր ինձ։ Դա երգ չէր, այլ մի բողոք. Նա սկսում էր ամենաբարձր ձայնանիշներից և որքան գնում, այնքան աւելի էր բարձրանում, կարծես ուզում էր մրցել հեռւում սպիտակին տուող ձիւնապատ լեռների գագաթների բարձրութեան հետ։ Դա «քիւրդական բայաթի» էր։*

*Երգի սկզբի բառերը չկարողացայ պարզ որոշել. ում դէմ էր բողոքում, չգիտեմ. միայն դա հասարակ բողոք չէր. դա կռիւ էր երգով։*

*—Ջօխ սաղ օլ, գարդաշ*),—գոչեցի ես ամբողջ ոյժով՝ չը կարողանալով հիացմունքս ու ոգևորութիւնս զսպել։*

*Բայց ահա և երգիչը. գդակը քաշած ճակատին, հրացանը ձախ ձեռին, կուրծքն ամբողջովին փամփուշտներով պատած, իսկ աջ ձեռը ականջին դրած կիսով չափ երևաց պատնէշի վերայից։*

*Եւ նա զլեց.*

*Ողջոյն հայրենի կանաչ լեռներին,*
*Բարձր գագաթներ, ձեր սիրուն տեսքին.*

*Երգում էր նա ու նրա ձայնը գեղգեղում էր և տարածւում ընդարձակ հովտի մէջ. իսկ երբ ընդհատում էր, լեռներն ու հովիտը դեռ երկար արձագանքում էին նրան։*

*—Պ. խմբապետ, թոյլ տուր կրակելու. թշնամին գաղտագողի շրջապատում է մեզ, — դարձաւ ինձ տասնապետներից մէկը։*

*—Ոչ ոք չհամարձակուի կրակել. որտեղ երգն է, այնտեղ պէտք է դադարի արիւնը,—ասացի ես։*

*—Բայց ձեր վարմունքը դաւաճանութիւն կարող է նկատուել, որովհետև մեզ ամենքիս կը կոտորեն։*

*—Տղերք, միթէ ձեր հաւատը կորցրիք դէպի ինձ. հապա այս կուրծքը ձեր պատնէշը չէ՞,—ասացի և ուժգին զարկեցի կրծքիս։*

*Նա լռեց, բայց տասնեակների դէմքերին պարզ դժգոհութեան նշաններ էի նկատում. նրանք սաստիկ յուզուած էին երևում և ամուր բռնել էին հրացանների փողերից։*

*Նրանց մէջ խուլ շշուկներ անցան։*

*Փոքր ընդմիջումից յետոյ երգիչը կրկին սկսեց։*

*Ես ամբողջովին հմայուեցի՝ մոռանալով մի րոպէ առաջ*

---

**) Շատ ապրես, եղբայր։*

եղած բողոքները։ Մօտս կռթնած էր իր հրացանին իմ ամենասիրելի զինակիցներից մէկը՝ Խէչօն։ Թխադէմ, արևից այրուած առնական դէմքով, խոշոր սև աչքերով մի հուժկու ջիւան էր նա։ Նա էլ մտայոյզ էր։ Ո՛վ գիտէ՝ ինչ յիշողութիւններ էին յուզում նրա աներկիւղ սիրտը։

Երանի՜ կրկին ձեր գրկում հանգչեմ,
Հայրենի լեռներ, մուրազս առնեմ…

—Կրակ,—որոտաց տասնապետներից մէկի հրամանը, և տասնեակների համազարկերը խլացրին երգի վերջին խաղը, որ երկար լսվում էր օդի մէջ…

Ես տեսայ, թէ ինչպէս երգիչը խոնարհուեց ու՝ գլխիվայր՝ պատնէշից ցած գլորուեց…

—Ա՛յ նամարդ…,—լսուեց թշնամու բանակից, և այնուհետև համազարկերն էին միայն որոտում…

—Տղե՛րք, երգն սպանեցի՞ք,—խելագարի պէս գոռացի ես և դուրս թռայ պատնէշից դէպի երգիչը՝ նրա խոցուած սիրտը գրկելու…

—Խելագա՛ր, ի՞նչ ես անում,—գոռաց ետևից Խէչօն՝ վեր թռչելով, բայց և իսկոյն, ինչպէս հնձած խուրձ, գետին փռուեց մի անսովոր ճիչ արձակելով.

—Զարնուեցի՜…

Հրացանը նրա ձեռքից շառաչելով ընկաւ պատնէշի քարերի վրայ…

Այս բոլորը կատարուեց մի ակնթարթում։

Շանթահար եղածի նման յետ թռայ և գրկեցի Խէչօյի արիւնաթաթախ դին։

Նա դեռ շնչում էր. առանց երկար մտածելու՝ շալակս առայ նրան և թշնամու տեղատարափ գնդակների տակ հեռացայ…

Գնդակները սուլում էին չորս կողմովս, բայց ես՝ մոռացած ամեն մի վտանգ՝ իմ թանկագին բեռով առաջ էի գնում։ Ետևումս մի սոսկալի ճակատամարտ էր տեղի ունենում…

Թշնամին հրապուրելով ինձ իր երգով՝ կարողացել էր սողալով շրջապատել մեզ. այդ բանը նկատել էր տասնապետս և կրակելու նշան էր տուել, որին հնազանդուել էին ամենքը՝ ի նկատի առնելով վերահաս վտանգը։

Օրհասական կռիւ էր…

Ես բարձրանում էի լեռն ի վեր կանաչ մարգերի միջով. բեռս քանի գնում՝ այնքան ծանրանում էր, իսկ նրա վէրքից ծորող արիւնը ողողում էր ինձ. իմ մարմնի վրայ զգում էի

Նրա հպումը, և սարսուռ էր անցնում ամբողջ մարմնովս…

Վերջապէս ես յոգնած՝ գետին դրի Խէչօյի մեռնող դին։ Նա դեռ շնչում էր։

Խէչօն հազիւ բացաւ նուաղած աչքերը. ես աշխատում էի վէրքից հոսող արիւնը կանգնեցնել։ Ինձ ամբողջովին քրտինք էր պատել։ Ա՜խ, եթէ այդ ժամանակ ունենայի կենդանացուցիչ զօրութիւն. ամենից առաջ այն կը տայի իմ ջիւան Խէչօյին, որ նա ապրէր, շատ ապրէր։ Սև թախիծը պատել էր հոգիս ու կապարի պէս ճնշում ինձ. կարծես ես էլ նրա հետ մեռնում էի… Կարծես կեանքն իմ մէջ ևս դադարում էր։ Աչքս յառած նայում էի նրա դէմքին՝ աշխատելով ամեն մի շարժում, որ նրա վերջին արտայայտութիւնը կարող էր լինել, ըմբռնել։ Ահա նա ինչ-որ բան է շշնջում. ես ականջս մօտեցնում եմ.

—Երգն… էր… մեղաւոր…,—հազիւ կարողանում եմ որոշել, և ամեն բան վերջանում է…

Մի վերջին համբոյր ծաղկաւէտ լեռան լանջին հանգչող սարի հպարտ զաւակի հպարտ ճակատին, և ամեն բան իմ մէջ ևս մեռնում է…

---

Այստեղ վերջանում էր ընկերոջս պատմութիւնը։

Իմ առաջին գործն եղաւ նրա մասին տեղեկութիւններ ժողովել։ Նա արդէն մեռել էր։ Վերջին տարիները նա եղել է կրկին ուսուցիչ։ Պատմում էին, որ իւրաքանչիւր աշակերտական երեկոյթի ժամանակ նա լուռ ու մելամաղձոտ դէմքով նստում էր մի անկիւնում առանձնացած, և ամեն անգամ մի քանի օր հիւանդ պառկում։ Ընկեր-ուսուցիչները նրան սիրահարուած էին համարում։ Մի այդպիսի երեկոյթից յետոյ նա կրկին պառկեց և այլևս վեր չկացաւ… Ոչ ոք նրա գաղտնիքը չգիտէր։

ՍՈՒՐԷՆ

# ORCHIDEAE

---

Գիշերը սփռել է հսկայական թեւերը…

Փրփրացայտ ջրերի հետ գգվում են լուսնի վսեմ շողերը։ Խնկաբոյր վարդենին՝ ձիւնանման ծաղիկներով պսակուած՝ դիւթում է… Սօսիների խորհրդաւոր ստուերների հետ խաղում է նրբաշունչ զեփիւռը, մեղմիկ ծորում, բնութեան անմահ, սքանչելի երգն է երգում…

Սակայն լուռ է իմ հոգին, չի բռնվում տակաւին։ Անզգայ եմ դէպի զորեղ հմայքը համասփիւռ…

Անցեալն է ինձ անյաղթ տիրապետում… Ա՛յլ գիշեր, ա՛յլ երկինք… Լսողական յիշողութեանս մէջ այլ հնչիւններ են դողդողում… Ցնորքի՜ գիշեր… Երևակայութեանս մէջ մնացել է վառ՝ կարծես խաւարում բոցեղէն կայծակ… Հուր-սիրոյ, բուռն բաղձանքների և մահաշունչ սարսուռի՜ գիշեր ..

Վաղո՜ւց էր արդեօք…

Ինչո՞ւ ժամանակը չի խլացնում, մոռացութեան խորխորատը չի գլորում այդ սուր, կծու տպաւորութիւնները… բերկրանքի և վշտի խելակորոյս մտապատկերները…

Չէ՞ որ այն ժամին երկինքն էր նոյն կախարդ, ծաղկունքը՝ քնքշաբոյր և ծովը ալեծուփ մրմնջում էր սիրահար, և հեռաւոր աստղերը առկայծում՝ կարծես ժպտում, հրաւիրում էին կեանքի մեծ խնջոյքը տօնել…

Ապա ինչո՞ւ մռայլուեց ..

Ինչո՞ւ վառ տենչանքի, գուրգուրանքների ժամը՝ դառն անձկութեան, խորունկ տանջանքի յաւերժական անդունդը կլանեց...

Իմ սիրոյ առաջին և վերջին նուիրական գիշեր... սրարշաւ, կարծես երազ... Արևվառ արշալոյս և վերջին, մարող դողդոջուն շողի սգաւոր հրաժեշտ...

Ցա՜ւ է մտաբերել անմահ րոպէները... Բարձրաթըռիչ խոհեր և գեղանի դէմքը, կեանքի հրաբորբոք թըրթիռները և արտասուքը՝ մարգարտի նման ցոլացող...

Իսկ այն հրակէզ երկրի օտար ծաղի՞կը դիւթիչ, արիւն-վարդագոյն...

Օդային, արծաթափայլ թել-արմատներով ցցուել է ուղեղիս մէջ... հալածում է անծայր...

Լուռ, անքնութեան ժամերին՝ երբ հոգիս ընկղմվում է մշուշապատ անուրջների մէջ, իրականութիւնը կորցնում է իր գոյութիւնը. երբ արթնանում են անցեալի ուրուականները՝ զգում եմ, թէ ինչպէս ձիւնաթոյր թելերը մեկնում են իրանց քնքոյշ շօշափուկները, փաթաթվում պարանոցիս... կերպարանափոխվում՝ շուշանանման ձեռքերի ձև են ստանում... Արծաթաթել մատներից դանդաղ գլորվում են արեան կաթիլները՝ կարծես ակինթ պսպըղուն... Ծաղիկը ընդունում է չքնաղ էակի գծագրութիւնը և կենդանի էակը՝ անշուշտ ծաղկի նման՝ փայլում է սառը փայլով...

Թափառում եմ երկրից երկիր, խուռն բազմութեան, աղմկայոյզ ցնցումների մէջ ճգնում եմ նսեմացնել, խեղդել այդ յիշողութիւնները... Բայց և խառն ամբոխի և մտերիմների շրջանում և փոթորիկների մէջ միայնակ եմ... միշտ միայնակ անցեալի հետ... Վերապրում եմ անցեալի ամեն մի ակնթարթը և սքանչելին, հոգեզմայլը, երբ հոգիս սաւառնում էր երջանկութեան ծովում... երբ երկու շունչ մի ցանկութիւն, մի կամք էին սրբազան... Վերապրում եմ այն խորունկ զգացմունքը՝ տանջանքի, վշտի, որի մէջ տակաւին խորասուզուեցինք...

Հոգուս, անծայր մտքերիս, անհուն խոհերիս մէջ մի կենտրոն կայ, սուրբ խորան... Ո՛ւր դարձնում եմ հայեացքս, նոյն խորհուրդն եմ որոնում... Սուր, խոցոտող շանթերի նման՝ անշէջ բորբոքում է երևակայութիւնս...

Երջանկութիւնը հրաթև էր, արագընթաց, իսկ վիշտը՝ անվերջ... մռայլ խաւարի նման՝ ծովատիրում է...

Թանձր մթութիւնը կլանում է և անցեալը, և ապագան, և ցնծութիւնը, և փայլուն շողի հետքն անգամ...

Յիշո՛ւմ եմ...

Ահա իմ սրբավայրը՝ հիւսուած սիրոյ ոսկեթել լարերից, իղձերից վսեմնագոյն... Բնութեան շքեղ պարգևները՝ գեղեցիկ ներդաշնակութեամբ՝ միացրել էի գեղարուեստի ստեղծագործական հրաշալիքների հետ։ Փարթամ ծաղիկների, մետաքս-թաւշի, փառաշուք նըկարների, մարմարիոնի ծալքերում մի գաղափար էր թագնուած։ Զքնաղն էր տիրում... Երկրպագում էի, ծընկաչոք խոնարհում... Ապրում էի, մարտնչում էի յանուն հրեղէն յաղթանակին...

Դա իմ դաւանանքն էր...

Երբ դիցուհիս մտաւ՝ կարծես այդ հրապուրիչ տաճարի մէջ նոր լոյս թափանցեց, նոր շունչ փչեց... Հուր աչքերը փայլեցին հրճուանքի խնդութեամբ, վառուեցին շողակաթ ջահի նման... Հրատապ շրթունքներիս վրայ զգացի ջերմ համբոյր... Գգուանքի թովչութեամբ հրդեհեց արիւնս կրակոտ ալեակներով ..

Խելակորոյս վայրկեաններ, երբ երկինքը և երկիրը միանում են, ձուլվում մի տենչանքի մէջ... Երբ հոգին պատառում է ժամանակի քօղը, բարձրանում է անսահման վեհութեան և մարմինը կուրութեամբ արտափայլում է նրա հզօր հրամանները... Երբ բնութիւնը հասնում է ուժգնութեան գագաթնակէտին, երկնում է և՛ բերկրանք, և՛ տանջանք՝ մէկը միւսից գերազանց, մէկը միւսից բղխող...

*Անցել են տարիներ. .*

*Սակայն դեռ մինչև այժմ՝ կարծես հեռաւոր, մըշուշապատ վայրերից՝ բուրում է քնքշաբոյր օդը... Խաւարի միջից ժպտում է գողտրիկ դէմքը, հնչում է ձայնը... Նրա թովչութիւնը յիշեցնում էր անդորր գիշերուայ մէջ կարկաչող առուակին, որի մարգարտահոս ալեակներում արտացոլում են հրավառ աստղերը. . յիշեցնում էր՝ ցօղազարդ արշալոյսի ոսկեհնչիւն արթնանալը...*

*Զարդարում էի գեղանի գլուխը ծաղիկներով թէ՝ ոսկեձոյլ գանգուրներով՞ էի խաղում... գուրգուրում էի թէ յայտնում էի սրտիս նուիրական խորհուրդները.. խորասուզվում էի սևաթոյր աչքերի խորքերը՝ որոնում նորաբողբոջ, ցայտուն մտքեր կամ ուշադիր ունկնդիր էի՝ միևնոյն է... Վեհ վայրկեաններ էին՝ սրարշաւ, հագուագիւտ... Երևան է գալիս գիսաւոր աստղը երկնակամարի վրայ՝ իբրև հանելուկ՝ անհուն ժամանակի և տարածութեան խորխորատներից, փայլում է սքանչելի փայլով, սթափեցնում է ապշած մահկանացուներին առօրեայ տաղտկութիւնից, ցնցում է իր խորհրդաւորութեամբ... Այնուհետև՝ իբրև հանելուկ՝ չքանում է տիեզերքի անթափանց անդունդներում... Մնում է միայն հրաշագեղ երևոյթի թոյլ յիշատակը...*

*Գուրգուրում էի...*

*Շրջապատը լողում էր վարդագոյն շողերի մէջ...*

*Վայրկեանը՝ անմահ էր և ժամը՝ մի ակնթարթ...*

*Հաղորդւում էր ծրագիրները...*

*Հպարտ և գեղեցիկ էին... վաղորդեան թարմութիւն էր բուրում... լեռնագագաթների հովասուն զեփիւռի նման՝ զարնում էր սրտիս վսեմագոյն լարերին...*

*Լսում էի հիացած...*

*Յանկարծ՝ հուրիի գլխում երկնեց մի միտք, մի նոր գաղափար... քմահաճո՞յք էր արդեօք թէ՞ նրա էութեան, նրբազգաց հոգու գերագոյն պահանջը, ներքին յոյզերի արտայայտութիւնը կամ խելագար, հիւանդոտ ցնորք,*

չզիտեմ... սակայն անսասան էր բուռն ցանկութեան մէջ, վայրենի, վտանգաւոր ցանկութեան...

Հազիւ գաղափարը լրացաւ՝ միանգամայն տիրապետեց... Շնչում էր ականջիս, փաղաքշում էր, աղերսում, սակայն հրամայողական օրէնքի ուժգնութեամբ էր հնչում...

—Սովոր եմ զգալ մեր հոգիների ներդաշնակութիւնը, այն խորը, ցնցող շաղկապը, որը միացնում է մեզ այդքան հումկու... Ոչ մի ստուեր չպէտք է պղտորէ մեր ներքին, խորհրդաւոր մտերմութիւնը։ Աշխատիր հասկանալ ինձ, յարգել իմ կամքը... Ես անծանօթ եմ իրական կեանքի հետ. գրեթէ մինչև այժմ օդային ամրոցներում էի սաւառնում... Այսօր՝ երբ իմ առաջ բացվում է նոր կեանք՝ կամենում եմ իրականութիւնը ճանաչել, թափանցել նրա գաղտնիքների մէջ, երևոյթները ըմբռնել... ճանաչել շրջապատը, ծանօթանալ մրրկող ույժի հետ... Վայելչութեան բարձունքներին արժանանալու համար՝ իջնենք մի վայրկեան մեր գահից, խորասուզուենք մութ գիշերուայ մէջ, նրա անդորրութեան կնիքը պատառենք ու լռութեան մէջ լսենք աղմուկի անծանօթ երգը, յափշտակենք թաքնուած խորհուրդը...

—Իսկ եթէ նրա շնչառութիւնը թունաւոր է, եթէ սպառնում է յուզել, դղրդել մինչև սրտի խորքը՞...

—Դա անխուսափելի է... Վաղ թէ ուշ մենք կենթարկուենք նրա հարուածներին... Ինձ թւում է, թէ ով առանց երկիւղածութեան մերձենում է տանջանքին, մարտնչում է, նա յաղթում է... բիւրեղացնում է իր հոգու հնոցում, ծնվում է նոր կեանքի համար՝ աւելի պայծառ, աւելի կենսունակ...

—Հուրի, իմ հուրի... Լսիր ինձ... Այն երգը սոսկալի է... Առասպելական այն հրէշն է, որը հեռուից դիւթում է իր ձայնով, ապա յանդուգն մերձեցողին կլլանում...

—Ոչ, կուրութեան մէջ անկարելի է ապրել... Կեանքը, նրա աղմուկը... Զգում եմ աներևոյթ թելերը, որոնք ձգում են, հրապուրում են... Եւ ինչքա՜ն ես երկիւղ ձգում սրտիս մէջ... Ես ուժեղ եմ... Եւ ծո՜վ... Դու, որ գառանցում ես ընդհանուր կեանքի գեղեցկութեան գաղափարի յաղթանակը տանել, հիւսում ես նրա պսակի գեղեցիկ ոստերը... Միթէ հնարաւոր է ստեղծել չքնաղ տաճարը խախուտ հողի վրայ, առանց ուսումնասիրութեան... Դէհ, ուրեմն, ոգևորի՛չ ղեկավար, վառի՛ր կանթեղդ, ցո՛յց տուր դժգոյնը...

Յանդուգն շրթունքների վրայ ցոլում էր կիսահեգնական ժպիտը, սակայն ջերմ համբոյրով աշխատում էր մեղմացնել դառն տպաւորութիւնը...

—Երբ մենք կը վերադառնանք, մեր չքնաղ տաճարը կընդունի գերբնական փայլ... չնաշխարհիկ, դրախտի փայլ...

Հրաբորբոք բառերը թափվում էին կայծակի արագութեամբ, իսկ ինձ պատում էր խուլ, անորոշ նախազգացում... յուզում էր ամբողջ էութիւնս... Ինձ թւում էր, թէ մի ինչ-որ ահաւոր ուրուական մերձենում է, սպառնում է մեր երջանկութեանը... Յանդիմանում էի... որոնում էի ամենաքնքոյշ դարձուածքներ, որոնց թելադրում էր ծով-զգացմունքս, իմ երկիւղը՝ տհաճութեան չենթարկել սիրած էակիս... Լարում էի իմ տրամաբանական ամբողջ ոյժը՝ խելացնոր ցանկութիւնը փարատելու...

Ապարդիւն. ամուր էր՝ ինչպէս ժայռ...

Յետոյ՝ կարծես ծանր երազ լինի, խեղդող մղձաւանջ...

Շրջմոլիկների նման դեգերում էինք փողոցներում... Այդ մեր միակ գիշերը... հա՜-հա՜-հա՜... շրջմոլիկների նման...

Եւ լուռ, մութ գիշերը սկսեց երգել իր երգը, շշնջաց իր գաղտնիքները...

Մարգարտահոս ծովի մրմուռը չէր, յաւերժահարսերի քաղցրալուր նուագը, սոխակի անոյշ դայլայլիկը՝ լոյսի ցնցուղների ու վարդի հանդէպ և ոչ էլ սիրոյ զգուանքի մեղմահնչիւն մեղեդին...

Կեանքի վառ գոյները անզօր էին ծածկել մռայլը... Գեղեցկութեան և բերկրանքի քօղի ետև թագնուող այլանդակը բարձրացրեց իր նենգաւոր գլուխը, արձանացաւ իր ամբողջ մերկութեամբ...

Աղքատութեան թաղերում, ուր բորբոսն ու ցնցոտիները մրցում էին, մարդկային տկարութիւնները բոյն էին դնում ու վարակիչ թոյնը տարածում շուրջը. մահը՝ վաղաժամ՝ թագնվում էր կտուրների տակ. կիսաքաղց կեանքի մատնուած զոհերի կսկծի բողոքն էր հնչում, խուլ բողո՛քն էր հնչում...

Գործարաններից ծուխ և մուխ էր բարձրանում։ Ծխի և բոցի մէջ ստուերներ էին շրջում՝ լուսնոտի նման։ Աշխատանքից բթացած ուղեղով, յոգնած մկանունքներով՝ լուսնոտի նման՝ գանձեր էին դիզում, իրանք մնում միշտ կեղտոտ ու քաղցած։ Զուարճութիւնը՝ օղին է, աղօթքը՝ հայհոյանքը և օրհներգը՝ տանջանքի ճիչը...

Հեռու՝ զրկուած թարմ օդից, լոյս-ազատութիւնից՝ փակուած է մարդը՝ գազանի նման... Չկայ երկինք, չկայ լուսնի շող... Ամուր է նրանց վանդակը... Պահապաններն են գիշեր ցերեկ հսկում... Այնտեղ տիրում է վայրենի զայրոյթը, և ատելութեան ոգին այնտեղ ցանում է առատ սերմեր։ Անէծքը՝ շրթունքների վրայ, ոխը՝ կրծքներում՝ ողբում են ծանր բեռի տակ... Երկաթակուռ շղթաների շառաչիւնն էր լալագին ձայնակցում՝ խաւարի այդ վայրում...

Զեղխութեան գերեզմաններից՝ շքեղ զարդարուած, վառ լուսաւորուած՝ կենդանի դիակների զարշահոտութիւն էր բարձրանում... Պաշտամունքները՝ գռեհիկ սրբապղծութիւն, կեանքը՝ մոլեգին ցնորք, շարաւոտ գոյութիւնը և ժպիտը՝ մահացողի ժպիտ... Երաժշտու-

թեան հնչիւններին միանում էր ստրկուհիների ցնծութեան բրբիջը, ողողուած դառնագոյն թոյնով, հնչում էր՝ իբրև աղեկտուր, ցաւագին հեծեծանք...

Հիւանդութեան տներից՝ մարդկային անթիւ ախտերի, անթիւ տառապանքների խեղդուած լաց ու կոծի սրտառուչ մրմուռն էր ծորում...

Առաջ էինք ընթանում...

Եւ գիշերը՝ թէև աստեղազարդ, թէև պայծառ, բայց մռայլ՝ ինչպէս անհուն խաւարը, պատառում էր շղարշը, մերկացնում գաղտնիքները... Լռութեան մէջ երկնող ոճիրների գաղտնիքները գալարուող չարութեան, վայրենի բնազդների... Հրէշաւոր պայմանների օղակի մէջ խեղդուող զոհի գլորման գաղտնիքը...

Այդ մեծ ողբերգութեան մէջ չքանում էին վայելքի փշրանքները, երջանկութեան չնչին մասնիկները... Բնութեան շռայլ պարգևը՝ կեանքը, ողողուած՝ արտասուքի դառնութեամբ, տառապանքների բեռի տակ ճնշուած, թւում էր խոշոր թիւրիմացութիւն...

Նայում էի...

Հուրիի լայնացած աչքերը այրվում էին... Սարսուռ էր դրոշմուած այդ աչքերում...

Սակայն, արբեցողի նման՝ խորասուզվում էր փողոցների խորքը... Կարծես ինչ-որ գաղտնի ույժ, աներևոյթ հոսանք մղում էր առաջ...

Սուլոց, ոստիկաններ... Աղօտ լոյսի տակ մի ակնթարթ նշմարվում է երիտասարդ դէմք...

—Ո՞վ է դա, վիրաւոր կենդանին, որին որսում են...

—Գիշերուայ ասպետը... Խաւարի մռայլ թևերի տակ մռայլ արարողութի՞ւն է կատարվում թէ՞ լոյսի ջահակիրն է, անվեհեր մարտիկը, որի գաղափարները վտանգ են սպառնում ուժեղների տիրապետութեանը...

Հերոսը թանգ է գնահատում ազատութիւնը... Դիմադրում է...

Պայթոց… կրկին… նորից… խուլ արձագանքը կըրկնում է…

Նորից տիրում է լռութիւն…

—Դա ի՞նչ է, ո՞վ արձակեց գնդակը… ո՞ւմ սպանեցին… ինչո՞ւ է թափվում արիւնը… ինչո՞ւ է մարդը՝ գազանի նման՝ հալածում մերձաւորին… Սա ո՞վ է՝ ընկած փողոցում։ Անապաստա՞ն է… Մի՞թէ լայնատարած աշխարհը նեղ է, չկայ հանգստութեան անկիւն… Գալարուող որդը, չնչին զեռունը նոյն իսկ բջիջ ունեն. իսկ բանական մարդը՝ ցեխի մէջ է թաւալվում… Ի՞նչ է փնտռում այդ մենաւոր կինը կէս գիշերին. կարծես ըստուեր լինի… Ողջակէզի զո՞հը թոյն է որոնում իր մարմնի համար և վրէժխնդրութեամբ լի՝ վարակում կեանքի մաքուր աղբիւրները…

Խաւարից ծնվում էին ուրուականներ, բազմանում, կուտակվում, հրհրում…

Լուսնոտի նման՝ կարծես ինչ-որ գերբնական ույժի ենթարկուած՝ առաջ էին ընթանում…

Այլանդակն էր, որ տիրում էր… դիւահար պարի մէջ՝ գիշերուայ անդորրութիւնը կատաղի աղմուկով ցնցում…

Աւերիչ ոգին էր տիրում… Նախնական մարդու կործանող ոգին, որը՝ բորենու նման՝ անթափանց անտառներում՝ ռունգերով է ճանապարհ բացում… Ժամանակի խորքերում փայփայած, հազարամեակներով սնուցած, կենդանի է միշտ նրա սաղմը, գրկում է մարդկութիւնը եօթգլխանի վիշապի նման, խեղդում է իր կրծքում… Շարժառիթն է նրան՝ կեանքի տենչը, հետևանքը՝ ուժեղի նուաճները և թոյլի տապալումը… Հանդիսանում է՝ հրճուանքի քրքիջով, մոլեգին ժպիտը շրթունքներին, կծկվում է մահաշունչ տառապանքների սարսուռով… Արիւնռուշտ, տարերային ուժգնութեամբ կործանում է՝ շիրիմներ կազմում թոյլերից, ուժեղներին պսակում յաղթանակով… Հրդեհների, հրեղէն շիթերի և արիւնա-

ներկ շաւիղների վրայ է յագեցնում ծարաւը... մռնչում վայրենի գազանի որոտալից թնդիւնով...

Այլանդակն էր, որ տիրում էր... Ոսկեզարդ պաճուճանքներում, կեղծիքի դիմակը երեսին՝ խեղդում էր ոսկուց հիւսուած ցանցի մէջ՝ մարդկութիւնը խեղդում էր... արհաւիրք էր ցանում...

Ոհ, այդ գիշերը, այդ մերկացումները...

Վշտահար լուսինը՝ արտասուաթոր շողեր էր թափում...

Ծովը ծփում էր հանդարտ, մեղմիկ, խորհրդաւոր...

Թոյլ, անզօր յենուած էր կրծքիս իմ հուրին, ջերմանոցի այդ վիրաւոր ծաղիկը, որի թերթիկները դալկացան դառնաշունչ հողմի առաջին շփումից...

—Հեռու, հեռու...

Գուրգուրում էի, շոյում էի, համբոյրներով ծածկում սառած ձեռները՝ շուշանանման, քնքոյշ...

Դողդողում էր, հազիւ շշնջում...

—Զարհուրելի է... Մի՞թէ կեանքը այդքան այլանդակ է... Ինչո՞ւ, ինչո՞ւ... Մի՞թէ արժէ ապրել արհաւիրքի այս ծովում, եթէ անկարելի է ուղղել... Ուղղել և՛ մարդուն, և՛ պայմանները։

—Բարդ հարցեր են, իմ հուրի, բարդ՝ ինչպէս ինքը կեանքը... Առեղծուած, որի լուծումը թագնուած է բնութեան, գոյութեան խորունկ գաղտնարաններում...

— Ոհ, ես վախենում եմ այժմ... Կեանքը իմ աչքում ընդունել է հրէշաւոր կերպարանք... Թունաւորում է և լոյսը, և գեղեցիկը... Եւ մի՞թէ գոյութիւն ունի գեղեցիկը, եթէ շուրջը տգեղն է տիրում... Բուրաւէտ Եդեմը կը կորցնի իր հրապոյրը, եթէ դրսից կը թափանցեն այն սոսկալի ձայները...

Սլանում էր մեր կառքը...

Գրեթէ ուշաթափ՝ կրծքիս սեղմած՝ բարձրացրի սանդուխքներով... Ահա լոյսի գողտրիկ հանգրուանը՝ ծաղիկների մէջ խորասուզուած։ Այստեղ հանգիստ կառ-

նեն վրդովուած ճղերը։ Այստեղ՝ մեղմահնչիւն մթնոլորտում՝ կը վերադառնայ խախտուած հաւասարակշռութիւնը…

Յուսախաբ ցնորք…

Վառ գոյները դալկացել էին, կորցրել վաղեմի փայլը…

Ստուերներ էին փռուել դողդող, թագնուել անկիւններում… Լսվում էր ինչ-որ խեղդուած հառաչք, խուլ, բեկբեկ հնչիւններ… Ծաղիկները նման էին շարաւոտ վէրքերի, կերպասը և թաւիշը ցնցոտիներ էին յիշեցնում։

Այլանդակը ներս էր խուժել, մեկնում էր սուր, շանթող շօշափուկները։ Ներս էր խուժել, պատառել շքեղազարդ վարագոյրները, թունաւորել ոսկեզօծ շքեղ բոյնը…

Գունատ, հիւանդ էր ժպիտը հուրիի դէմքին… Աչքերը, որոնք առաջ հրեղէն շիթեր էին սփռում, այժմ վիշտ էին արտացոլում։ Փառաշուք թափում էի նրա ոտքերի տակ իմ սրտի գանձերը… երկնքից յափշտակում էի արևվառ լոյսը, մրրիկներից՝ ոյժը, եթերքից՝ ոսկեհնչիւն լարերը…

Աւաղ, ապարդիւն էր… Խաւարի հուժկու երգը հալածում էր… Գռեհիկ իրականութիւնը դրոշմել էր իր կնիքը… Այլանդակի ուրուականը ամեն մի անկիւնից դևի նման հեգնում էր, թափում դառն մաղձը…

Խելայեղ ժամեր…

Եւ վիշտ, և արտասուք, և աղաչանք, և հրաբուխ զգացմունքի մրմնջահար թովչութիւնը…

Քանի դեռ ապրում եմ, քանի դեռ երակներումս հոսում է արիւնը, մի տեսարան կը մնայ ուղեղումս դրոշմուած…

Իմ առաջ կենդանի են կիսամերկ մարմնի նազելի ուրուագծերը՝ ծածկուած սպիտակաթոյր շղարշով՝ վսեմաշուք այն գծերը և նրա դիմացը՝ պերճ արիւն-ծաղիկը օդային արծաթափայլ, նրբահիւս արմատներով…

Կոյր չէի… Սակայն այն տեսարանի ներքին իմաստը հասկացայ ուշ, աւաղ, չափազանց ուշ…

Նայում էր անթարթ, անշարժ հայեացքով՝ յենուած ծաղկանօթի վրայ…

Թեթև աղմուկ… Ծաղիկը փռուեց թաւշեայ գորգի վրայ, և անօթի փշրանքները ցրուեցին ամեն կողմ…

Վերցրեց վիրաւոր ծաղիկը, սեղմեց կրծքին։ Քնքոյշ արմատները ցցուեցին ոսկեձոյլ գանգուրների մէջ։ Հերարձակ գլուխը զարդարուեց ձիւնանման թելերով, օձապտոյտ թելերով… Զառանցանք էր արդեօք՝ խոշոր ցնցումներից առաջացած։ Ինձ թուաց թէ՝ վսեմ կրծքին բոսորային բիծ է փայլում և արեան յակինթ կաթիլները դողդող ակօսում են ճկուն, հոլանի մարմինը…

Զկարողացայ ինձ զսպել՝ աղաղակեցի։

Դարձրեց դէմքը… Լուրջ էր, հանդիսաւոր… Բևեռուած աչքերում արտասովոր, մռայլ արտայայտութիւն էր կենտրոնացած…

Կրկին սեղմեց կրծքին…

Արձանացայ… Լարուած լսողութիւնս ըմբռնեց հազիւ շնչող բառերը…

— Բուսած թշուառութեան հիւթերով, ծանր գնով…

Դիմեց ինձ… Հիւանդոտ ժպիտը շրթունքներին, ձայնը՝ թախծոտ…

—Տգեղը նսեմացնում է չքնաղի արժէքը, չէ՞…

Գրկեցի… Ջերմ համբոյրներով կամենում էի ցրել մտքերը…

Ըմբոստ էակ… Կամ ամբառնում էր անմատչելի, երանաւէտ բարձունքները, կամ խորասուզվում վշտի անդունդը, ցաւի մեծ ծովը… Ամեն ինչ տեսնում էր նոր գոյներով, տենդային գոյներով…

—Փոթորկի կատաղի ալիքները փշրում են շուրջը, իսկ մենք՝ անուրջների հրեղէն թևերի վրայ խնդութիւն ենք տօնում… սաւառնում լազուր եթերքում… Հա՛-հա՛-հա՛…

Այս գաղափարը կլանեց, յաղթեց նրան…

Հանգան ճրագները…

Լուսինը մելամաղձոտ՝ հազիւ էր թափանցում վաբագոյրի բացուածքներից… Ծաղիկները խնկարկում էին…

Կրծքիս վրայ կենդանի էակը թրպրտում էր յուսահատ կուռւմ…

Գեղաշուք դէմքը գերեզմանային արտայայտութիւն էր ստացել…

Սև ստուերները փռուեցին…

Մթութիւնը, թանձր խաւարը պատեց…

Յիշում եմ…

Ծաղկազարդ դաշտ, նազելի դէմքը՝ լուռ, խորհրդաւոր… վառ ջահերի ցոլացումը, բուրվառների զօղանջիւնը… բուրաւէտ ծուխը…

Յիշում եմ…

Զանգերի հանդիսաւոր, եղերերգական հնչիւնները… թաղման յուղարկաւորութեան աղեխարշ հառաչքը… Ապա՝ խոր անդունդ և մի բուռը հող…

Մի բուռը հող… կեանքի աղմուկից դէպի յաւերժական անդորրութիւնը…

Դեռ կենդանի եմ…

Դեգերում եմ ամայի անապատում…

Ի՞նչ եմ որոնում… Կորցրած գեղեցկութեան հմայքն եմ փնտռում թէ՞ այլանդակի ուրուականը հալածում… Գուցէ դեռ կեանքը, մերկացած իրական կեանքը հրապուրում է՝ չքնաղ զառանցանքները թաղելուց յետոյ… Դեռ կենդանի՞ է իմ մէջ կենսունակ արարածը, որը և վայելքը և տանջանքը ձուլում է հոգու հնոցում…

Չգիտեմ… Գիտեմ միայն, որ չքնաղն եմ կորցրել… կեանքիս չքնաղը… Փոթորիկներ են սլացել, կայծակները՝ շանթահարել, մրրկածուփ ալիքների անհեթեթ գրկախառնութեանն եմ ենթարկուել… Սակայն, ամուր ժայռի նման, անդրադարձնում էի հարուածները, մար-

տընչում, ալաքների դէմ ալաքներ արձակում և կեանքի ծովի յորձանքներին դիմադրելիս՝ յակինթ-ծաղկի ձիւնաթոյր թելերից պսակ էի հիւսում՝ արիւն-արտասուքով շաղախուած...

Զքնաղ թելերից...

ԿԱՐԻՆԷ

---

***

Ոսկի՜ գարուն կերթայ դարձեալ,
Աշուն կը գայ մութ ու սե՜ւ,
Ես, մոռացած՝ ներկայ, անցեալ.
Կը մըրմընջամ յարատե՜ւ։
Հոգւոյս վըրայ ձըմեռ կը գայ,
Սէրըս կընկնի ցըրտահա՜ր,
Գարո՜ւնն, ափսո՜ս, էլ յե՜տ չի գայ,
Յաւէտ կերթա՜յ ինձ համար...։

Ս. ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ

Պետերբուրգ.

# ՕՏԱՐ ԵՐԳԻՉՆԵՐ

## II

***

*(Ռօբերտ Բեօրնս)*

*Մթին գիշեր է, մռայլ ու խաւար,*
*Բայց գինետունը ուրախ ու պայծառ։*
*Արբածի համար գինու մի բաժակ՝*
*Աստղ է, և լուսին, արև-արեգակ։*
*Հաշիւ, տանտիկին,*
*Գինու քանակը,*
*Հաշիւը տուր հին,*
*Լցրու բաժակը։*
*Էս կեանքը տօն է տէրերի համար,*
*Չքաւորներին՝ սով ու ցուրտ առատ.*
*Այստեղ բոլորի յարգը հաւասար.*
*Ամեն-մի արբած իր տէրը ազատ։*
*Սրբազան հեղուկ։ Ես խեղդում եմ արդ*
*Նրա մէջ բախտս կոյր ամենայնի,*
*Քամում բաժակը, որպէս տղամարդ,*
*Քամում ու խնդում... Է՜յ, նորից գինի։*
*Հաշիւ, տանտիկին,*
*Գինու քանակը,*
*Հաշիւը տուր հին,*
*Լցրու բաժակը։*

Դ. ՆՈՐԵԿ

---

## III

***

*(Ս կ ի տ ա լ է ց)*

*Անուշ հնչում են բոժոժ ու զանգակ,*
*Պարզամտօրէն մտմտում հեքեաթ...*
*Եւ ձիւնակոլոլ թռչում է սայլակ,*
*Դէմքիս մաղելով ցօղ, փոշի՜ արծաթ։*

Զուրկ է աստղերից մութ երկնակամար,
Լոկ առկայծում են լոյսերը անբիծ.
Անուշ ղօղանջը չէ առնում դադար,
Ու սիրտս չունի հոգսեր ու թախիծ։
Է՜հ, թռի՛ր, հոգիս, ընդգրկի՛ր պատրանք,
Հեռո՛ւ սուզուեցէ՛ք դուք, դէմքեր թառամ.
Բերում են աչեր ինձ հրապուրանք
Թուխ թարթիչների էն շարքից փարթամ։
Է՜յ, ուղի բացէք, մի ուղի ինձ հարթ,
Ուզում եմ ապրել անյագ, անսահմա՛ն։
Ոչ ոքի ուղին չեմ գի՛ջի ես արդ,
Ես սիրել գիտեմ, ատել խիստ դաժան...
Թեքում ծածկել է իր թաթը Նազուկ...
Հազիւ աջողուէր շոյել այդ բազուկ,
Սակայն այս ձիւնից միտքս է պղտոր,
Եւ բօժօժները կարդում են օրօր...
Է՜յ, դուք պարզասիրտ, և՛ բօժօժ, և՛ զանգ,
Սիրոյ երգիչներ՝ խօսուն, մտերիմ,
Լռեցէք հիմա ժպտուն, խորամանկ,
Սքօղէք քնքոյշ գաղտնիքները իմ։
Մութը փռել է մի թաւշէ դիպակ,
Ծածկուել են աստղեր՝ ո՛չ շող և ո՛չ լոյս.
Լոկ բօժօժները պարում են մենակ
Ու անվերջ երգում իմ սէրը, իմ յոյզ։
Եւ թող մեզ մարդիկ տեսնեն այս պահուն,
Փուշակեն թովիչ խօսքերի մասին,
Տեսնեն զանգերից, աչքերից փայլուն
Ու ճերմակ ձիւնից հալուած այտերին։
Է՜հ, բօժօժները կարդում են արբիչ,
Պարզամտօրէն մտմտում հեքեաթ...
Փայլում են աչեր սիրուն ու թովիչ
Դէմքիս մաղվում է ցօղ, փոշի արծաթ...

Դ. ՆՈՐԵՆ

# ՇԵՓՈՐՈՒԿ

(Եւգ. Չիրիկովից)

Ա՜խ, որքան հրաշալի է բուրում շեփորուկը գարնան վաղ առաւօտներին, երբ արևը դեռ ևս չէ վանել գիշերային զովը և ծծել ցօղը նրա ծաղիկներից ու տերևներից...

Մի անգամ, երիտասարդութեանս արշալոյսի օրերին, ես վերադառնում էի քաղաքի շրջակայքում կատարած զբօսանքից՝ մի սիրելի, գեղեցիկ աղջկայ հետ։ Ուրախ թռչնակների երամի նման՝ մենք դուրս թռանք մակոյկից և, բաժանուելով զոյգ-զոյգ, ցրուեցինք քաղաքում իրար ուղեկցելու...

Արևը նոր-նոր բարձրանում էր քաղաքի վրայ. Նրա ոսկեհուռ ճառագայթները շողազարդում էին եկեղեցու գմբէթները, խաչերն ու բարձր տների պատուհանները։ Փողոցներում դեռ ևս տիրում էր զովն ու լռութիւնը, տների պատուհանները վարագոյրներով ծածկուած... Այնտեղ, պատուհանների ետև, ամենքը դեռ անուշ քնած էին։ Մեր քայլերը աղմկելով գնգում էին վաղ առաւօտի խաղաղութեան մէջ...

Երկար ցանկապատի վրայից, որի վրայ բազմաթիւ մեխեր էին ցցուած, ճկուել էր սաղարթախիտ շեփորուկը իր ցօղաշաղ ողկոյզների ծանրութեան տակ՝ պճնուած սպիտակ ու բաց մանիշակագոյն ծաղիկներով...

Ա՜խ, ինչ սքանչելի է բուրում շեփորուկը գարնանային վաղ առաւօտեան, երբ դու ընդամենը քսան տարեկան ես և երբ դու քայլում ես սիրելի, գեղեցիկ աղջկայ հետ միատեղ, կողք-կողքի, և բերկրանքով ցնցվում ես ամեն անգամ, երբ հանդիպում է հայեացքդ նրա հայեացքներին ու ժպիտներին...

—Պոկեցէք ինձ համար շեփորուկի մի ճիւղ...

Մենք կանգ առանք։ Ցանկապատը կոկիկ էր ու բարձր, մեխերով պատած։ Ձեռնափայտովս փորձ արեցի կռացնելու շեփորուկի թուփը. այդ փորձը պսակուեց գեղեցիկ անաջողութեամբ. անձրևի նման, իր անուշաբոյր ցօղերի կաթիլներով մեզ ոռոգեց շեփորուկը։

—Գոնէ մի հատիկ ճի՜ւղ…

—Սպիտակը…

—Այո՛… Ոչ. բաց-կապուտակը…

Ես անձնուիրաբար ցանկապատի վրայ բարձրացայ շեփորուկ գողանալու իմ սիրելի, գեղեցիկ աղջկայ համար… Ժանգոտած մեխը պատռեց ձեռքս, բայց ես չնկատեցի այդ, որովհետև ոչ մի ցաւ չզգացի։ Գլուխս պտոյտ էր գալիս շեփորուկի անուշ բուրմունքից, ցօղի կաթիլները ճիւղերից ցատկոտում էին ուղղակի դէմքիս, ճիւղերը ցնցւում, ճարճատում էին ձեռքումս, իսկ աղջիկը, որի վրայ ես շաղահարում էի առաւօտեան ցօղի անուշաբոյր անձրևը, հրճուանքով նայում էր ու ծիծաղում… Նրա համար ես պատրաստ էի ճղակտոր անել, պոկոտել աշխարհիս բոլոր ծաղկած շեփորուկները, բոլոր սպիտակներն ու բաց-մանիշակագոյնները…

—Բաւական է…

Հերոսի նման ես ցած թռայ ցանկապատի վրայից։ Ուրախ, զուարթ, սիրող աչքերը շողշողացին ինձ վրայ լուռ շնորհակալութեամբ։

—Այս ձեզ… ի յիշատակ…

Նա լռեց և, շառագունելով, թագցրեց դէմքը շեփորուկների մէջ…

—Ի յիշատակ ի՞նչ բանի… Ինչո՞ւ մենք այդպէս դիմում ենք յիշատակի օգնութեան…

—Ի յիշատակ այս զբօսանքի… Այս առաւօտուայ… այս շեփորուկի… Ի յիշատակ նրա, որ նա այսքան անուշ կերպով բուրում է վաղ առաւօտեան…,—ասաց աղջիկը և մօտեցրեց շեփորուկի մարմանդ փունջը երեսիս։—Այդ ի՞նչ է ձեռքիդ վրայ։ Արի՞ւն…

Աղջիկը մեկնեց ինձ իր փոքրիկ մետաքսէ թաշկինակը. Նրանով փաթաթելով ձեռքիս դաստակը՝ ես գնում էի առաջ այն հերոսի նման, որը կռուի մէջ վէրք է ստանում ի պատիւ իր սիրած աղջկայ։ Երբ մենք կանգ առա՛նք և սկսեցինք իրար հրաժեշտ տալ, աղջիկը խլեց ինձնից թաշկինակը…

—Ինձ նուիրեցէք այդ թաշկինակը։

—Ոչ։ Ես կը վերցնեմ այն ինձ… իբրև յիշատակ…

Ես վերադարձրի. Թո՛ղ. չէ՞ որ թաշկինակը ներկուած է իմ արիւնով…

Բայց ահա կեանքի ստոր պրոզան… Նա միշտ միջամըտում է մեր կեանքին և խուզում է մեր թևերը ուղիղ հէնց այն միջոցին, երբ մենք պատրաստւում ենք սաւառնելու դէպի

վեր՝ կապուտակ եթերը հեռաւոր երկնքի…

Անձկութեամբ և երջանկութեամբ լի հայեացքով ես բռնել էի աղջկայ նուրբ, դողդոջուն ձեռքերը և չէի բաց թողնում, կամենալով յետաձգել անջատումը դեռ մի քանի վայրկեան ևս. ես նայում էի աղջկայ՝ կարմրութիւնից վառուած դէմքին, որը կիսածածկուած էր շեփորուկի փունջով, և արբել էի ինքս էլ չգիտեմ ինչի՛ց. շեփորուկի բուրմունքի՞ց արդեօք թէ՞ նրա վառվռուն այտերից ու ամօթխած հայեացքներից… Որտեղից որ էր՝ դուրս եկաւ յանկարծ ծոյլ, քնաթաթախ դռնապանը ցախաւելը ձեռքին և, նայելով մեզ, ծոծրակը քորեց ու ասաց.

—Ձեր անդրավարտիկը, պարոն, պատռել էք… Հարկաւոր է կարկտել… Լաւ չէ…

Ես յետ նայեցի… Աղջիկը յետ խլեց իր ձեռքը և բարձրաձայն ծիծաղով փախաւ բակի խորքը։

Փախաւ… Ինչո՞ւ։

—Դու ի՞նչ ասացիր, դռնապան… Ի՞նչպէս համարձակուեցիր…

Դռնապանը լրջութեամբ բացատրեց բանի էութիւնը…

—Երևում է՝ մեխի ես ձգել ու պատռել… Լաւ բան չէ…

Ես լաւ զննեցի իմ հագուստը և կարմրեցի ամօթից, վիրաւորանքից, ստորացումից… Կարծես թէ մէկը թքով պատեց սպիտակ շեփորուկի իմ ճիւղը… Հանդարտ քայլերով անցայ փողոցներով դէպի տուն։

Առաւօտեան ժամերգութեան զանգերն արդէն ղօղանջում էին, փողոցի սալայատակների վրայով դղրդիւնով առաջ էին գլորվում դեռ ևս հատ-հատ երևացող սայլակները, ճռնչում էին գարպասների դռնակները… Սկսվում էր կեանքը…

Մինչև այժմ էլ մտքիցս չէ հեռանում գարնանային վաղ առաւօտը, ցանկապատը ցից-ցից մեխերով, շեփորուկի կախ ընկած թփերը, անուշաբոյր ցօղի շաղահարը, աղջկայ ամօթխած դէմքը, որ հազիւ երևում էր բաց մանիշակագոյն և սպիտակ շեփորուկի փնջի ետևից…

Եւ այսօր էլ լսում եմ, կարծես, դռնապանի կոպիտ ձայնը, որ փախցրեց գարնանային առաւօտի և՛ երազները, և՛ անուշ բուրմունքը։

Ա՛խ, ո՛րքան սքանչելի բուրում է շեփորուկը վաղ առաւօտեան, երբ արևը դեռ ևս չէ ծծել նրա վրայի ցօղը, երբ դու քսան տարեկան ես դեռ, երբ քեզ հետ է կողքիդ կանգնած քո սիրած, սիրուն աղջիկը…

Լ. ԴԱՆԻԷԼԵԱՆ

# ԲԱՆՏԻ ԽՈՆԱՒ ՅԱՐԴԸ

(Պատմուածք Ժան Րիշպէնի)

---

Նա իր բանտարկութեան առաջին տասը տարին պարապ անցկացրեց։ Դիտում էր չորս կողմը, տեղաւորվում ու ընտելանում բանտի կեանքին։

Սակայն նա դեռ քսան տարի էլ պիտի մնար բանտում։ Ուստի մի գեղեցիկ օր նրան ծանր թուաց այդօրինակ պարապ կեանք անցկացնելը ու նա վճռեց գտնել իր համար մի զբաղմունք, ի հարկէ, ոչ ազատ մարդու վայել, այլ միայն մարդու, որովհետև ինքը բանտարկեալ է։ Նա մի տարի շարունակ այդ մասին մտածում էր, կշռադատում գլխում ծագած իւրաքանչիւր միտք, իւրաքանչիւր պլան ու երկար խորհում, թէ նրանցից որը պէտք է ընտրել՝ իբրև իր կեանքի վերջնական նպատակ։

Կրթել սարդե՞ր... Բայց դա այնքան հին է, ծամծմուած ու ամենքին յայտնի։ Pellisson-ից արտագրութիւններ անե՞լ... Թո՛ւ... Ուրիշից օգտուե՞լ... Ողորմելի՜ գողութիւն...

Մատերի վրայ հաշուել պատերի խորդ ու բորդութիւնները... Սակայն դա ծիծաղելի ու անօգուտ մի զուարճութիւն է, առանց շօշափելի և յայտնի արդիւնքի։

Պիտի գտնել,—ասում էր նա,—այնպիսի մի բան, որ նոր լինի, օգտակար ու հրապուրիչ. այնպիսի մի բան, որ վրէժ պարունակէ իր մէջ. այնպիսի մի զբաղմունք, որով կարելի լինի ժամանակ անցկացնել, բարելաւել դրութիւնը և որ միևնոյն ժամանակ բողոքի ույժ էլ ունենայ։

Նա մի տարի էլ որոնեց... վերջը աջողութեամբ պսակուեց նրա հաստատակամութիւնը...

Նա ապրում էր այնպիսի մի բանտում, ուր արևը օրական միայն կէս ժամ էր լուսաւորում բանտը, իսկ լոյսը ներս թափանցում մազի պէս բարակ շերտով... Խղճուկ անկողինը,

որի վրայ հանգստանում էր նա՝ ջարդուած ու յոգնած, իսկապէս խոնաւ յարդից էր միայն։

—Օ՜, լաւ,—բացագանչեց նա եռանդով,—ես կը նեղացնեմ բանտապահներիս, ես կը խաբեմ արդարադատութիւնն ու կը չորացնեմ իմ յարդէ անկողինը։

Նա նախ համրեց յարդէ կապոցի կտորները. հազար-երեք-հարիւր-եօթ հատ էր։

Ողորմելի, չնչի՜ն մի կապոց։ Ապա փորձեց, թէ որքան ժամանակամիջոցում կարելի է չորացնել յարդի մի կտորը. երեք-քառորդ ժամ էր հարկաւոր։ Հետեւապէս յարդի հազար-երեք-հարիւր-եօթ կտորի համար հարկաւոր կը լինի ինն-հարիւր-ութսուն ժամ տասն-հինգ րոպէ, բայց որովհետեւ արեւը օրական միայն կէս ժամ էր լուսաւորում բանտը, ապա կերթար ընդամենը հազար-ինն-հարիւր-վաթսուն-մէկ օր։

Հաշուելով միջին թուով, որ արեգակը երեք օրը մէկ անգամ է ծագում, նա այդպիսով կը չորացնէր ողջ յարդը տասն-վեց տարում, մէկ ամսում, մէկ շաբթում և վեց օրում։

Վեց ամիս էլ այդ ձեռնարկութեան մասին երկար-բարակ մտածեց նա... Վերջը գործի կպաւ։

Ամեն արև օր վերցնում էր նա յարդի մի կտոր, մօտեցնում արևի բարակ ճառագայթներին, պահում այնքան, մինչև որ չորանար։ Չորացնելուց յետոյ յարդի կտորը ծոցն էր դնում, խնամքով պահում։

...Անցաւ տասը տարի։ Բանտարկեալը քնում էր այժմ խոնաւ ներքնակի միայն մի-երրորդի վրայ, բայց դրա փոխարէն նրա կուրծքը բարձրացել էր, որովհետև չորացրած միւս երկու-երրորդ մասը դարսել էր կրծքի տակը...

...Անցաւ տասն-հինգ տարի։ Ի՜նչ ուրախութիւն։ Խոնաւ յարդի հարիւր-երեսուն-վեց կտոր է միայն մնում։ Չորս-հարիւր-ութ օր էլ՝ ու բանտարկեալը հպարտ է իր աշխատանքով։

Նա կը ծիծաղի անհնազանդ խռովարարի պէս, նա կը յաղթէ հասարակութեանը ու կը գոչէ նրան վրէժով ու չարախնդութեամբ լցուած.

«Ա՜, դուք ինձ բանտարկել էիք խոնաւ յարդի վրայ քնելու։ Լա՜ւ, շա՜տ լաւ։ Լաց եղէք այժմ կատաղութիւնից, որովհետև չոր յարդի վրայ եմ ես քնում»։

Բայց աւա՜ղ. անողոք ճակատագիրը իր որսին էր սպասում։ Մի գիշեր, երբ բանտարկեալը ապագայ երջանկութեան մասին էր երազում, բերկրութիւնից խելքը կորցրեց,

անմիտ ու անզգոյշ մի շարժում արաւ ու թափեց ջրի ամանը. Ջուրը ողողեց նրա կուրծքը. . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

Ի՞նչ անել այժմ. նորի՞ց սկսել սիզիփեան աշխատանքը թէ՞ ոչ։ Արժէ՞ տասն-հինգ տարի ևս կորցնել՝ չորացնելու յարդը... Հապա ձանձրոյթը, հոգով ընկճուելը... Դուք, երջանիկներդ, որ հրաժարվում էք քսան-հինգ քայլ անել, երբ այդ հարկաւոր է լինում ձեզ, կը համարձակուէ՞ք, արդեօք, կշտամբել նրան.

«Բայց,—կասէք դուք—,չէ՞ որ նա տարի ու կէս միայն պիտի մնար բանտում»։

Բայց դուք մի՞թէ բանի տեղ չէք դնում նրա վիրաւորուած հպարտութիւնը, խորտակուած յոյսը... Ինչպէ՞ս... Նա, որ տասն-հինգ տարի շարունակ չարչարվում էր չորացրած յարդի վրայ քնելու համար, կը համաձայնի՞ արդեօք բանտից դուրս գալ՝ խոնաւ յարդի կտորտանքները գլխին...

Ո՛չ. նա այդպիսով կը կորցնէր իր արժանապատուութիւնը...

Ութ օր ու գիշեր նա իր վշտի մէջ էր խորասուզուած. յուսահատ կռիւ էր մղում ու աշխատում նորից ոտքի կանգնելու։

Վերջացաւ այդ նրանով, որ նա հրաժարուեց փորձեր անելուց ու իրան յաղթուած համարեց։ Կռիւը տանուլ էր տուել։ Երեկոյեան, լքուած ու ուժասպառ եղած, նա ընկաւ ծընկաչոք։

—Աստուա՛ծ իմ,—հեծկլտալով ասաց նա,—ներիր ընկճուելուս համար։ Երեսուն տարի շարունակ ես տանջվում էի, զգում՝ թէ ինչպէս է մարմինս նիհարում, միսս հիւծվում, աչքերս փչանում, արիւնիս գոյնը կորչում, մազերս ու ատամներս թափվում։ Միայնութեան մէջ դիմանում էի ցրտին ու քաղցին։ Սակայն իմ մէջ կար մի ցանկութիւն, որը պահպանում էր ոյժերս. ես ունէի կեանքի նպատակ։ Ցնորքս այժմ անհնար է իրագործել։ Ընդմիշտ կորաւ իմ նպատակը, ու ես անպատուուած եմ այժմ։ Ների՛ր ինձ, որ ես ձգում եմ դիրքս, թողնում կռիւը, փախչում դաւաճանի ու երկչոտի պէս։ Ես այլևս չե՛մ կարող...։

Քիչ յետոյ զայրոյթը բռնեց բանտարկեալին։

—Ո՛չ, ո՛չ,—գոչեց նա,—հազար անգամ ոչ. նրանք չպէտք է ասեն, թէ կեանքս զուր անցաւ։ Ո՛չ, ես յաղթուած չեմ... Ո՛չ, ես չեմ ձգի դիրքս... Ո՛չ, ես երկչոտ չեմ... Ո՛չ, այլևս ո՛-

մի րոպէ ես չեմ պառկի բանտի խոնաւ յարդի վրայ… Ո՛չ, համարակութիւնը բաւարարութիւն չի՛ ստանայ… յաղթութիւնը նա չի տանի…։

Ու գիշերը բանտարկեալը մեռաւ՝ յաղթուած, որպէս Բրուտ, մեծ՝ որպէս Կատոն։ Նա մեռաւ հերոսի պէս։ Խելագարը կերել էր ողջ յարդը։

ՎԻԿՏՈՐ ՄԱՆՈՒԷԼԵԱՆ

---

# ԻՄ ՏԱՊԱՆԱԳԻՐԸ

(Պ ո ւ շ կ ի ն ի ց)

(1815 թ.)

Այստեղ է թաղուած Պուշկինը մեռած,
Որ ջահել մուսով, սիրով վառվռած,
Իր ուրախ դարը ծուլութեամբ ապրեց։
Իր ամբողջ կեանքում թէև նա մէկին լաւութիւն չարեց,
Բայց վկայ է Աստուած՝ կապոյտ երկնքի,
Որ նա մի մարդ էր հոգով շատ բարի։

Թարգմ. ԱՂԱՍԻ ԷՖՐԻԿԵԱՆ

# ԿԱՐԱ-ՕՂԼՈՒ *)

## (Հայ ասպատակի մը կեանքէն)

---

### ԳԻՐՔ Բ.

—

### II

### Միս Թրեսօքի տունը

*Միւս առաւօտ Ֆէնէլա անյօժար կը զգար բարձրանալ անկողնէն, վասն զի անձրեւը դեռ եւ համբերատար յարատեւութիւնով մը կը տեղար։ Պատուհանէն անձրեւին ուղղահայեաց գծերով վար հոսումը կը տեսնէր։ Այս գծերէն անդին՝ կանգնած էին ժանտաթզենիի ծառեր՝ գագաթները դէպի երկինք ուղղած, կարծես գթաշարժ բողոքներ ընելու՝ ծածկոցի չգոյութեան համար։ Տժգոյն ու թաղծալի առաւօտ մըն էր, առաւօտ մը՝ որ մարդ կուզէ գաւաթ մը թէյ կուլ տալ ու նորէն քնանալ, մինչեւ որ արեւը դուրս գայ։ Դողով մը՝ Ֆէնէլա նստաւ անկողնին մէջ։*

*Դեռ եւ հագուելու ժամանակ չունեցած՝ մէկը բաղխեց դուռը, ու առանց մտնելու թոյլտուութեան սպասելու՝ ներս մտաւ փոքր, արտակարգ երեւոյթով ծերունի կին մը, խորշոմած դէմքով։ Հագած էր կոշտ կտաւէ պատրաստուած զգեստ մը, որ չէր յարմարած իրեն՝ մէկ ուսը միւսէն բարձր ըլլալով։ Ճերմակ գդակ մը իր ալեւոր մազերը կը ծածկէր։ Ծերունի տիկինը վաթսունի մօտ կերեւէր եւ ակնոց էր դրած, թանձր, անպաճոյճ ակնոց մը։ Կը խօսէր արագ, գրգռուած շեշտերով ու Ֆէնէլան կը զննէր տարօրինակ արտայայտութիւնով մը, ուր կը նշմարուէր պայքար մը՝ խորշանքի ու գթոյ միջեւ՝ ծանրաչուի աղջկան հանդէպ։*

---

*) «Արօր» № № 6—7, 8–9—10, 11, 12 1910 Թ. և № 1 1911 Թ.

—Չե՞ս ուզեր գիտնալ, թէ ո՞վ եմ ես,—հարցուց Ֆէնէլային։

—Թերևս միս Թրէսօք խնդրած է ձեզ իմ մասին իմանալ,—պատասխանեց Ֆէնէլա, մտածելով որ սա տնապահը կրնայ ըլլալ։

Ծերունին զարմացած երևցաւ։

—Ո՛հ, այո՛։ Անշուշտ՝ ձեր հոս ներկայութիւնը այնքան հաճելի է միս Թրէսօքի, որ անկարող է զսպել ինքզինքը ձեր մասին հարցուփորձելէ։

—Կրնայի՞ք յայտնել ինձ թէ՝ իրապէս ո՞վ էք դուք,—հարցուց Ֆէնէլա, փոքր ինչ զայրացկոտ։

Այդ փոքրիկ ծերուկը կը զգուէր զինքը։ Տեսակ մը թաքուն չարամտութիւն կար իր սուր, արթուն նայուածքին մէջ, որ քիչ մը վայրապար կերևնար այսքան կարճ ծանօթութենէ մը վերջ։

—Այո՛, ես ալ միս Թրէսօքի մէկ ուրիշ ենթական եմ՝ Անջէլա Ուիր։

Կէտ մը իր շեշտին մէջ՝ հաճեցուց Ֆէնէլան, որու զայրոյթը բոպէական էր եղած։ Դուրս ցատկեց անկողնէն ու համբուրեց ծերունի տիկինը։

—Մեծապէս կը ցաւիմ քեզ համար, — ըսաւ մեղմ ձայնով մը։

—Ինչո՞ւ։

Ծերունին ետ քաշուեցաւ, բայց զուարթ կերևնար։

—Որովհետև քու տարիքիդ՝ դառն է ուրիշի մը ենթակայ ըլլալ։ Դու պէտք է սիրուն, խաղաղիկ տուն մը ունենայիր քեզ համար և գեղեցիկ առարկաներով շրջապատուած ըլլայիր։

—Օ՛, եթէ դեռատի աղջիկ մը կրնայ ապրիլ այսպիսի տեղ մը, ես ալ ընելու եմ։

—Գուցէ չես գիտեր, թէ ես ինչու հոս կը գտնուիմ,—ըսաւ Ֆէնէլա երազուն։

—Ո՛հ, գիտեմ. բոլորը։ Ինչպէս ներկայի շատ մը աղջիկները, աւելի կը նախընտրես պառաւ կնոջ մը ենթակայ ըլլալ, քան թէ սեպհական ապրուստ ճարել։

—Ո՛չ, այդ չէ. այդ չէ։ Միայն, եթէ սիրելիներէդ մէկը՝ որ անիրաւած է ուրիշ մը, կամ այնպէս կը կարծուի, լաւագոյն չէ՞ այդ անիրաւութեան բեռը վրան առնել ու քաւել զայն։ Ես ընաւ չէի գար հոս, եթէ չնկատէի այդ պարտականութիւն մը, որ կը պարտիմ հօրս և... և միս Թրէսօքի։

—Ես գիտեմ այդ բոլորը,—ըսաւ միս Ուիր։—Հայրդ մե-

ռած է այժմ. ատիկա բարեբախտութիւն մըն է իրեն համար։ Եթէ չըլլար իր անսրտութիւնը, միս Թրէսօք եղծուած ու վատնուած կեանք մը ապրած չէր ըլլար։ Ան ջախջախեց միս Թրէսօքի սիրտը, թէպէտև սա ապրեցաւ ատոր շնորհիւ։ Ջախջախեց՝ լոկ հաճոյքի սիրոյն։ Շարք մը մարդիկ այդպէս են։ Քաղցր է իրենց գիտնալ, որ կին մը կը սպասէ իրենց գալստեան, չի տարակուսիր երբէք, չի հարցուփորձեր, կը հաւատայ իրենց՝ մինչև որ նժարը իջնէ։ Այդպիսի բաներ կը հաճեցնեն կարգ մը մարդիկ։ Քու հայրդ մարդ մըն էր—կամ apology մը մարդու—այդ տիպէն։ Չեմ ուզեր վշտացնել քեզ. բայց պէտք է ներողամիտ գտնուիս այս պարզ խօսակցութեանս։ Բնական չէ՞ որ միս Թրէսօք խորհէր թէ՝ դու ևս հօրդ կը նմանէիր։ «Ինչ որ ոսկորին մէջ կաճի», ինչպէս գիտես։

Ֆէնէլա կանգ առաւ պահ մը՝ խնդրին այս նոր երևոյթը նկատելու։ Գիտէր, թէ հայրը շատ սիրահար էր իգական հիացումի, թէ կանգ առած չէր երբէք՝ մտածելու թէ ինչպիսի չարիքներ կը գործուէին անխորհրդութեան և անսրտութեան շնորհիւ։ Այս կինը ամեն ինչ գիտնալ կերևնար իր մասին։

—Միս Ուիր,—ըսաւ հանդիսաւոր շեշտով մը,—ես հոս գալու պէտք չէի ունենար երբէք, եթէ չզգայի, որ հատուցում մը պարտ էր միս Թրէսօքի։ Անշուշտ մեծապէս պիտի խորշի ինձմէ։ Ես հոս եկայ այն տպաւորութիւնով, որ խիստ անհանգիստ պիտի ըլլամ. սակայն պիտի ջանամ իր սիրտը շահիլ, թէպէտև այս զարհուրելի պատնէշը ըլլայ մեր միջև յաւէտ։ Ա՜հ, լաւ, պէտք է տոկամ։ Միայն, միայն...

Վարանեցաւ։

—Միայն ի՞նչ,—հարցուց միս Ուիր։

—Եթէ դու ազնիւ գտնուիս ինձ, խնդիրը փոքր ինչ կը դիւրանայ։ Կրնա՞ս առաջնորդել զիս միս Թրէսօքին հիմա և մեր հանդիպումը վերջացնել։ Իր այդ սոսկալի նամակէն վերջ՝ տեսակ մը վախ կը զգամ իրմէ։

—Միս Թրէսօք բացակայ է,—ըսաւ միս Ուիր արագօրէն։

Ուղղուեցաւ դէպի դուռը, բայց վերադարձաւ կրկին։

—Շատ չէի խորհեր այդ նամակի մասին՝ եթէ քու տեղդ ըլլայի։ Հօրդ մահը հին վէրքերը բացաւ. թերևս իր գրածին լաւ մը գիտակից չէր։ Կրնայ ըլլալ որ ամիսներով չվերադառնայ։ Որ դայ՝ անմիջապէս կը տեսնես զինքը։

—Ե՞րբ հեռացաւ,—հարցուց Ֆէնէլա զարմացած։

—Երէկ գիշեր միայն, քու ժամանելէդ առաջ։

—Ոևէ... ոևէ հրահանգ ձգա՞ծ է ինձ համար։

—Ո՛չ։ Ո՛չ մասնաւոր բան մը։ Պէտք է սենեակդ ինքնին հոգաս ու ինծի օգնես։ Ես հիմա առաջուան պէս ժրաջան չեմ։ Այդ է բոլորը։ Ցաւ ունիմ կողերուս մէջ, և երբեմն այդ կը վընասէ ինձ իրեղէնները փոշեմաքրել։ Փոշին կարծես թոքերուս մէջ կը մտնէ ու կը խեղդէ զանոնք։ Կօգնե՞ս ինձ։

Ֆէնէլա երկար շունչ մը քաշեց։

—Ա՞յդ է իմ բոլոր ընելիքս... Ես աւելի բաներ կերևակայէի։ Ինձ այնպէս կը թուէր, որ կեանքս բեռ մը պիտի ըլլար լոկ։

—Վար եկուր նախաճաշելու,—ըսաւ միս Ուիր կարճ կերպով։—Մարդ միշտ դիւրաւ կրնայ տանիլ իր բեռները՝ լաւ նախաճաշէ մը յետոյ։

Ֆէնէլա շուտով հագուեցաւ. միս Ուիր մերթ ընդ մերթ հրճուական բացագանչութիւններ կընէր Ֆէնէլայի մինչև ծունկերը հասնող կարմիր հիւսքերուն վրայ. ու երկուքը միասին իջան նախաճաշի։ Զուարթ կրակ մը կը բոցավառէր խոհանոցը ու դուրսի թախծութիւնը կը վանէր մասամբ։ Սենեակը պատշաճօրէն կահաւորուած էր, թէպէտև մի քիչ խառնափնդոր ճաշակով։ Արդի զարդարումներ չկային հոն. սակայն թիւրքական գորգը կակուղ էր վրան կոխուելու, և քանի մը նկարներ պատերը կը զարդարէին։ Ատոնց մէկը տեղափոխուած կերևէր։ Ֆէնէլա շրջանակին նշանը կը տեսնէր կարմիր որմաթղթին վրայ։

Միս Ուիր զգալիօրէն մեղմանալ սկսաւ Ֆէնէլայի ուրախ ժպիտը տեսնելով։

—Կը սիրե՞ս,—հարցուց, սենեակին շուրջը նայելով։

—Այո՛,—ըսաւ Ֆէնէլա։—Ամէն ինչ ողբալի, գաժան ու զարհուրելի էր երէկ գիշեր. այս առտու ամէն բան գորշ անձրև էր։ Այժմ լոյս ու ջերմութիւն կայ, և սիրուելիք մէկը։

Մօտեցաւ ծերունի տիկնոջ և, յանկարծական բնազդէ մը մղեալ, ծնրադրեց անոր քով՝ կիսախեղդ լացով մը։

—Ո՜հ, միս Ուիր, հոգիս ապարապ է։ Կրնամ տոկալ ամէն բանի, տարակոյսի..., անվստահութեան..., նեղութեան, եթէ միայն դու շնորհես ինձ մի քիչ սէր ու գորով։ Առանց ատոնց անկարելի է։ Հայրս մեռած է, ու ես մի՛ս-մինակ եմ աշխարհի մէջ։ Մինա՜կ... Բոլորովին մի՛նակ..

Թաղեց դէմքը ծերունի տիկնոջ գոգը, ու միս Ուիր անոր կարմիր մազերը շոյեց մեղմօրէն։

—Մայրդ ալ այսպէս մազ ունէր,—ըսաւ։—Միս Թրէսօք շատ անգամ խօսած է ինձ այդ մասին։ Օ՜ն, նախաճաշիկնիս

ընենք, ապա թէ ոչ՝ օրիորդ Օստինի հերոսուհիներուն նման ժամերով կը խօսինք։

Ցէնէլա չորցուց աչքերը։

—Ո՜հ, միս Ուիր, մեծ մխիթարութիւն մըն է սա երէկուան սարսափներէն յետոյ։ Իրապէս կը հաւատամ, որ եթէ մարդիկ քիչ մը ևս աւելի սիրեն զիրար, իրենց հոգւոյն աչքը ճառագայթի կը փոխուի և կը վտարէ այս թախծապատ, ճնշող անձրևը։—ու ձեռքով պատուհանը մատնանշեց։

Ապա սկսաւ խնդալ, իր սուրճին գաւաթը վերցնելով։

—Միս Ուիր, կարծես զարհուրելի երազէ մը դուրս եմ ելած։ Թող մինչև միս Թրէսօքի վերադարձը երջանիկ ըլլամ, և եթէ ան չափազանց անողորմ գտնուի դէմս, կրնամ նորէն Հայաստան երթալ ու միսիօնար մը ըլլալ։

Միս Ուիրի դէմքին ծիծաղաշարժ խորշոմները խորացան։

—Մասնաւորապէս գրաւիչ երիտասարդ միսիօնար մը կա՞յ Հայաստան,—հարցուց։ —Իմ երիտասարդութեանս օրերուն՝ մենք աւելի զինուորականներուն վրայ կը խորհէինք, քան թէ միսիօնարներուն. զինուորականները միշտ գեղեցիկ պեխեր ունէին իմ օրերուս։ Միսիօնարները առանց խորութեան մազոտ են։ Անոնցմէ շատեր Եսաւի անմիջական շառաւիղէն սերածներ կը թուին, սա տարբերութեամբ որ՝ անոնք ապուրի փոխարէն փորին կը գործածեն։

Ցէնէլա ժպտեցաւ։

—Ո՜հ, մասնաւոր մէկը չկայ, բայց...—կանգ առաւ շփոթահար։—Երազողը կայ, բայց նա տղայ մըն է լոկ. շատ-շատ՝ ճարպիկ տղայ մը։ Օր մը մեծ գիրք մը պիտի գրէ. նոյնպէս և ես ալ սկսած եմ հատ մը։ Արդեօք ո՞վ պիտի աւարտէ նախ։

—Օ՜, գի՞րք պիտի գրես,—հարցուց ծերուկը, հետաքրքրութեամբ և առաւել յարգանքով։—Ի՞նչ գիտես կեանքի վրայ որ գիրք պիտի գրես։ Յարմա՞ր բան մըն է գոնէ։ Շատ յարմար կանայք կան, որ անյարմար գրքեր կը գրեն այս օրերս, ու շատ մը անյարմար կանայք կը գրեն յարմար գրքեր. այնպէս որ՝ մարդ ապահով չէ երբէք։ Գաղափար չունէի բնաւ, սիրելիս, որ գրական տիպ մըն ես դու։ Իմ երիտասարդ օրերուս՝ գրական անձինք ոտանաւորներ կը գրէին միշտ ալբօմիս մէջ և կը յայտնէին ինձ թէ՝ որքան կատեն զիրար։ Գրո՞ղ մըն ես իրապէս։ Գաղափար չունէի երբէք այդ մասին։

Ծերունի տիկինը մոռացաւ ինքզինքը։

—Նոյնպէս և ես։ Միայն, սովորեցայ աչքերս բաց պահել

և փոքրիկ պատմութիւններ հաւաքել, այնպէս որ պիտի փորձեմ գիրք մը գրել և ապա...

—Եւ ապա՞...

—Պիտի նուիրեմ միս Թրէսօքի, եթէ թոյլ տայ ինծ, և այնուհետև բարեկամներ պիտի դառնանք։ Թերևս մեռած անցեալը թաղէ իր մեռելը այն ատեն՝ տպագրիչին մելանով։

Միս Ուիր վար դրաւ գաւաթը։

—Ա՜հ, այնքան ալ դիւրին չէ։ Եթէ դու ես ինծի չափ ճանաչէիր միս Թրէսօքը, պիտի ըսէիր, թէ տարիներու գործը մէկ օրուան մէջ կարելի չէ կերպարանափոխել։

Ֆէնէլայի տժգոյն այտերը գունաւորուեցան։ Նախաճաշիկը ախորժելի էր անցած։

—Վերջապէս,—ըսաւ,—սխալ դատած եմ միս Թրէսօքը։ Այնքան ալ վախնալու բան մը չունիմ։ Ինչո՞ւ հեռացաւ։ Մեծապէս տառապած ըլլալու է, եթէ իմ տեսքս այդքան կը վրդովէ զինքը։

—Այո՛,—ու միս Ուիր հառաչեց։—Թերևս այդ էր։ Երիտասարդութիւնը միշտ սխալ կը դատէ ծերութիւնը, ու ծերութիւնըն ալ շատ գթած չէ երիտասարդութեան։ Կօգնե՞ս ինծի մաքրել ասոնք։ Մարթա Բրէդըլ միակ խոհանոցին հոգ կը տանի։ Ափսէն անդին է։

Ֆէնէլա ճարպիկօրէն ամանները ափսէին վրայ զետեղեց։

—Ո՜հ, հրաշալի՜ է,—ըսաւ խանդավառուելով։—Կը սիրեմ գործել տանը մէջ։ Օր մը, միս Ուիր, փիլաւ կը պատրաստեմ քեզ։

—Ի՞նչ,—հարցուց միս Ուիր, քանի մը տարիով երիտասարդ երևնալով։

Հիմա որ իր բռնապետը հեռացած էր, կարծես թարմ շահեկանութիւն մը կը զգար կեանքէն։

—Բրինձ ու կարագ է այդ,—բացատրեց Ֆէնէլա,—համեմ ու կարագ, և միս մանր կտորներ ու կարագ։ Երբ տարակոյսի մէջ ես, նորէն կարագ կը դնես։ Ատոր համար ալ Արևելքի ժողովուրդները այնքան իւղոտ կերևնան։ Վստահ եմ որ պիտի սիրես զայն։ Չես գիտեր թէ ինչպէս լաւ խոհարար մըն եմ։

Միս Ուիր նայեցաւ օրիորդին առաւել յարգանքով։

—Ա՜հ, սիրելիս, այս արցունքի ձորին մէջ երկար տարիներ եմ ապրած, բայց դեռ ճանչցած չեմ մէկը, որ կարող ըլլայ լաւ կերակրեղէններու դիմադրել։ Այդ միշտ դիմում կընէ իր, իր գերագոյն բնազդներուն, եթէ ուրիշ ամեն ինչ թերանայ։ Երբ դուն ալ իմ տարիքիս հասնիս, սիրելիս, պիտի տեսնես որ մար-

դիկ ամբողջովին ստամոքս են։ Մարդկային կազմուածքին վրայ, գիտես որ, ստամոքսը աւելի տեղ կը գրաւէ, քան սիրտը։ Իսկապէս՝ այնպէս կերևայ, թէ պախարակելու չենք գիրենք, խեղճ արարածները։

—Շատ ալ շիտակ է,—պատասխանեց Ֆէնէլա, որ այժմ սեղանածածկոցը կը ծալլէր։—Մարդիկ ընելիք գործեր ունին աշխարհի մէջ։ Մեծ գործ. փառաւոր գործ. պէտք է մկանունքներ, ջիղեր ու քաջառողջ մարմիններ ունենան. ու անոնք ինչպէս պիտի կատարեն իրենց գործը՝ եթէ լաւ սնուած չեն։ Ես յաճախ խորհած եմ թէ՝ կերակուր ու խմիչք շատ աւելի սերտ յարաբերութիւն ունին իրարու՝ քան որքան որ մարդիկ կերեւակայեն։ Իրենց փիլյաւին մէջ այդքան կարագ ըլլալն է որ արևելցիները այնքան սահուն կընէ։ Սակայն ներէ ինձ, միս Ուիր, գիտեմ թէ ունայնաբանութիւն է ըրածս։

Կէս-օրէն վերջ՝ անձրևը դադարեցաւ, ու Ֆէնէլա մթնոլորտը ճնշիչ գտնել սկսաւ։

—Կը կարծես թէ կրնամ ժամուան մը համար դուրս ելլել, միս Ուիր։ Պէտք եղածը կատարեցի տանը մէջ։

—Անշուշտ,—ըսաւ միս Ուիր։—Մաքուր օդը կօգնէ քեզ։ Ես պիտի մրափեմ։ Որքան ծերանամ, այնքան աւելի քունի պէտքը կը զգամ։ Մեծապէս սիրուն բան մը կը նկատեմ, որ բնութիւնը այսպէս ստիճանաբար կը պատրաստէ մեզ գերեզմանին՝ աւելի ու աւելի քուն շնորհելով քանի ծերանանք։

Սակայն Ֆէնէլա բնաւ տրամադրութիւն չունէր գերեզմանին վրայ խօսելու։ Հինցած անձրևարգել մը և խոշոր կօշիկներ հագնելով՝ իջաւ պարտէզ, մտաւ ոլորուն ճանապարհ մը և ապա, դառնալով, ուղղուեցաւ դէպի ձախակողմի բլուրները։ Թարմ հովը այտերը կը գգուէր. կանանչ խոտեր կը տատանէին ու կը փչուէին ոտքերուն շուրջը. Ջրաթաթախ ծաղիկներ կը բացուէին ու կը շարժէին ու կը պարէին ջինջ արևուն տակ։ Մանր ճագարներ, վախով ու յուզմունքով պաշարուած, բլուրի կողին կը ցատկռտէին։ Ձախ կողմը կար հսկայ պարտէզ մը, ուր շնորհալի վիթ մը կը ճարակէր։ Արևը աններևութացաւ։ Ամպի սև պատառներ կուտակուիլ սկսան հեռուն. օդը սրանալ սկսաւ։ Օրիորդը հրճուալիր վայելքի շունչ մը քաշեց։

Յանկարծ՝ եղերական ճիչ մը, գրեթէ մարդկային իր վշտահար շեշտին մէջ, ականջին հասաւ։ «Բի-վիդ… բի-վիդ… բի-վիդ…», և թռչուն մը, թաւալելով, տապլտկելով և օդային ամեն կարգի արտառոց միմոսութիւններ կատարելով՝ անցաւ մօտէն ու վերադարձաւ նորէն։ Կը թռչէր հովուն կողմը, հո-

վուն դէմ, առանց դադարի իր աղիողորմ կոչը կրկնելով։

«Ի՞նչ է պատճառը», — հարցուց Ֆէնէլա ինքնիրեն, կանգնած՝ Թռչունը դիտելով։

Հարցումը պատասխանուեցաւ շուտով։ Ընկերը վարի ճախճախուտ հողէն դուրս ելաւ ու երկուքը միասին թռան, արուին ձայնը տեսակ մը թռչնային խնդութի փոխուելով։ Միայնակ չէր ան այլ ևս։

Ֆէնէլա կը շարունակէր ճամբան, մինչ ամպերը հետզհետէ կը մթնէին ու վիթը ծառին հովանիին տակ կը կծկուէր։ Ցանկարծական ժայթքումով և գոռումով՝ անձրևի կուրացնող հեղեղ մը թափուիլ սկսաւ, պարփակելով օրիորդը, ու իր մոմշուրի ծալքերուն բաղխուելով՝ թաց հողին վրայ իյնալով։ Կանգնած՝ ուժգին կաթիլներուն հետ կը կռուէր ան, հրճուելով անոնց պաղ հպումէն և բոլորովին անտարբեր մազերուն քրքրուած վիճակին, որոնք՝ փոթորկին քմահաճոյքին թողուած՝ վայրագօրէն կը տատանէին։ Այս անարատ, դաժանօրէն քաղցր մկրտութիւնը մաքրեց ամէն ցաւ, ամէն երկիւղ հոգւոյն վրայէն։ Ինչե՞ր կըսէին այդ պաղ կաթիլները՝ բուռն յամառութեամբ մը իր շրթներն ու այտերը ծեծած ատեննին։ Եւ այս բոլոր գոռումին ու անձրևային հեղեղին վրայէն ականջին հասաւ առնական ձայնի մը հնչիւնը, որ վայրագ երգ մը կերգէր շուրջի տարրերուն։

Կոյր բանաստեղծին միակ ընկերը խոշոր ոսպաշուն մըն էր, որու օձիքէն բռնած՝ արագ վազքով մը փոթորկէն կը փախչէր, անձրևը մազերէն, մօրուքէն ու հանդերձներէն կաթկթելով։ Ֆէնէլա կարող էր դպիլ իրեն, երբ նա մօտէն անցաւ, անլոյս աչքերը անձրևին ուղղած։ Ապա ինք ևս վերադարձաւ տուն, ջրապարիկի մը չափ թրջուած, արշալոյսէն աւելի վարդագոյն։ Գիշերը անգամ մը արթնցաւ՝ մայր-հողին երգուած վայրագ երգը ականջին մէջ հնչուն, ու նորէն հովուն ու անձրևին տակն էր։ Այնուհետև արևը ծագեցաւ ժպտուն ծաղիկներուն վրայ, ու ան անգամ մը ևս խոր քնոյ մէջ ինկաւ։

Պահ մը վերջ դուռը բացուեցաւ և ներս սողաց մեղմօրէն միս Ուիր, մէկ ձեռքով կանթեղին լոյսը ծածկելով, որպէս զի ուղղակիօրէն Ֆէնէլայի աչաց վրայ չիյնէ։ Երկար ու կաթոգին նայեցաւ միս Ուիր ձեռքը բռնած մանրանկարի մը, ապա քնացող աղջկան, կարծես Ֆէնէլայի ժպտուն դիմագծերուն մէջ ուրիշ դէմքի մը նմանութիւնը գտնելու, մանրանկարի վրայի դէմքին նմանութիւնը, թէպէտև ո՛չ բոլորովին նմանը· որովհետև վերի վարդագոյն շրթունքը աղուամազի դեղին գծով մը եզերուած

էր, և միւս գլխուն վրայի մազերը կարճ ու կծկուած խոպոպներ էին։

Մէկէն՝ Ֆէնէլա ցնցուեցաւ քունին մէջ։ «Րասդո՛ս, դո՛ւն ես։ Դեռ... տուն... չէ... չէ... հեռանալու...»։

Ապա դարձաւ միւս կողմը և քնացաւ կրկին։

«Րասդոս, այդ միսիոնարը ըլլալու է, — խորհեցաւ միս Ուիլր։—Լա՛ւ, յիմար մը եղած է ան, որ չէ ամուսնացած իրեն։ Եթէ ես մարդ մը ըլլայի, որ, շնորհակալութիւն երկնի ողորմածութեան, որ չեմ, պիտի յիմարէի վրան։ Միայն թէ՝ մարդիկ այժմ այնքան խանդավառ չեն աղջկանց նկատմամբ, եթէ դրամ չունին անոնք»։

Կատաղի խորդկում մը արձակեց՝ որ քիչ մնաց արթնցնէր Ֆէնէլան, վերմակով լաւ մը ծածկեց քնացող աղջկան ճերմակ պարանոցը և, մուտքին նման, անշշուկ դուրս սողաց։

Ֆէնէլա կը շարունակէր երազել, բոլորովին անգիտակ որ անկողնի կողքին կինը հօր և աղջկան դէմքերը կը բաղդատէր։

---

III

Բինգըլտընի մէջ կեանքը շատ միօրինակ կանցնի Ֆէնէլայի համար։ Իր ամբողջ պարապոյ ժամերը նուիրած է վէպին, որու հերոսն ու հերոսուհին անփորձ զոյգ մըն են, միշտ աննպաստ ու անհաճոյ հանգամանքներու ներքև։ Ֆէնէլա չափազանց դժուար կը գտնէ իր նկարագիրներուն իսկական գոյնը պահպանել, որովհետև երբեմն այնպէս կը պատահի, որ առաջին գլխու միևնոյն հերոսուհին եօթներորդին չի նմանիր երբէք։

Միս Թրէսօք բացակայ է տակաւին, բայց այս հեռաւոր միապետը նամակով իր պատուէրները կուղարկէ շարունակ։ Կը գրէ միս Ուիլրի, թէ չի գիտեր ո՛ր ատեն գալը։ Կրնայ ըլլալ՝ վաղը, կամ ամիս մը յետոյ, կամ տարի մը վերջ. յայտնի չէ։ Նամակ մը, սակայն, մեծագոյն հարուածներէն մէկը կուտայ Ֆէնէլայի։ Վէպին ճիշտ աւարտման օրը միս Թրէսօք կը պահանջէ զայն որպէս ողջակէզ։ Աղջիկը, ցաւով ու արցունքով, կը զո՛հէ իր աշխատութիւնը այս անսիրտ կնոջ քմահաճոյքին։

Միս Թրէսօք վերջապէս կը սկսէր իր խայթերը զգալի ընել աղջկան, ինչպէս որ իր Սվազ գրած նամակին մէջ ակնարկած էր։ Խեղճ Ֆէնէլա ամեն փորձ կընէր գրքին հասած բախտը մոռանալ, բայց անհնար է այդ։ Գիշերները յաճախ կերազէ

*ատոր այրումին վրայ, որու մօտ կը տեսնէ միս Թրէսօքը, այդ չարագուշակ գործով զբաղուած։*

*Օր մըն ալ, երբ չափէն աւելի միայնակ ու նեղուած կը զգար, Մարթա Բրէդըլ ներս մտնելով՝ բլուրի կոյր բանաստեղծին գալուստը կը յայտնէ։*

*Միս Ուիր կը դժգոհի։*

*—Ի՞նչ ընելու է,—կը հարցնէ։—Ձըսե՞ր թէ միս Թրէսօք այստեղ չէ։*

*Վերջապէս կընդունուի և առաջին անգամ որ միս Ուիրի ձայնը կը լսէ, ցնցում մը կունենայ Քին։ Երբ այս ցնցումը ուրիշ դէպքի մը կը վերագրեն՝*

*—Ո՛չ,—կը պատասխանէ ան.—միս Ուիրի ձայնը ընտանի թուեցաւ ինծի։ Կարծեցի թէ ուրիշ անգամ մըն ալ լսած էի այդ։*

*—Ես միս Թրէսօքի քեռաղջիկն եմ,—կըսէ միս Ուիր,—և իբրև այդպիսին՝ չեմ կրնար հաւանիլ ձեր վարմունքին խօղերուն վերաբերմամբ։*

*Ու յիրաւի, կոյր բանաստեղծն ալ արդէն ներում խնդրելու է եկած այդ մասին, և ի նշան խաղաղութեան՝ հետն ալ բերած ծնեբեկի խոշոր ծրար մը՝ իբրև ընծայ։ Միս Ուիր մեծապէս կազդուի սոյն յարգանքի արտայայտութենէն և կը խոստանայ ինքը ևս իր կարգին մոռնալ անցեալը։*

*Պահ մը վերջ թէյ կը պատրաստուի ու հանդիսաւոր բաժակաճառերով՝ կը վճռեն թաղել անցեալի թշնամանքը և ապրիլ այնուհետև բարեկամաբար։*

*Ֆէնէլա նամակ մը կը ստանայ Երասդոսէ, ըսելով թէ յոյս ունի աշնան Անգլիա գալ իր գլխաւորին հետ։ «Հայկական հարցը» նորէն ցցուած էր ու հարկ էր տեղեկութիւններ հաւաքել Ռուսաստանի մտադրութեանց մասին՝ հայկական սահմանագլխին վերաբերմամբ։ Նամակը կը վերջանար գորովանքի ջերմ արտայայտութիւններով։ Ֆէնէլա չէ՞ր ուզեր վերադառնալ Պօլիս իրեն հետ։ Կրնային բոլորովին հանգիստ ապրիլ տարեկան 250 ոսկիով և այնուհետև միս Թրէսօքէ վախնալու հարկ չկար, ոչ ալ այլ ևս արցունքի հաց ճաշակելու։*

*Իսկապէս արցունքի հա՛ց կուտէր։ Քաղցրութիւն չկա՛ր բաժակին մէջ, տեսակ մը հրճուանք, հրճուանքը՝ տառապելու պատրաստ նահատակի մը։*

*Պահ մը յետոյ կերթայ ու սա հարցումը կը դնէ միս Ուիրի.*

*—Եթէ բոլորովին, բոլորովին վստահ չզգամ, թէ կը սի-*

քեմ մէկը, ամպարշտութիւն մը չէ՞ իմ կողմէս ամուսնանալ անոր հետ, որովհետեւ ինքը կը սիրէ զիս։

Միս Ուիր կը խնդայ անախորժօրէն.

—Ինծի մի՛ հարցներ, Ֆէնէլա. մի՛ հարցներ։ Եթէ ես աղջիկ մը ըլլայի, աւելի կը նախընտրէի օրապահիկիս համար քար կոտրել և իմ սիրած մարդուս հետ ամուսնանալ, քան վայելքի մէջ օրօրուիլ մէկու մը հետ, որուն ամուսնացած եմ իր դրամին համար։ Սակայն ինծի մի՛ հարցներ։ Ես ո՛չ մէկն ալ կատարած եմ։

Ասոր վրայ միս Ուիր կը թողու սենեակը աճապարանօք՝ մեծ յուզման ներքեւ։ Ֆէնէլա կը պատասխանէ Երասդոսի նամակին։ Բոլորովին վստահ է, թէ՝ տակաւին ոեւէ մէկուն սէր տածելու ընդունակ չէ։ Եթէ Երասդոս զինքը աշխարհի ամենէ գեղանի աղջիկը կը նկատէ, անշուշտ այն ատեն զուրկ չի կրնար ըլլալ ինք շահեկանութենէ։

Ֆէնէլա իր սենեակը երթալով հայելիին մէջ ինքզինքը կը դիտէ։ Աչքերուն փայլը կը շփոթեցնեն զինքը։

—Ու դեռ երէկ այս աչքերը արցունքով էին լեցուած,—կը խորհի ինքնիրեն։—Այսօր հրճուանքով կը շողշողան, թէպէտև դժբախտ գիրքս հաւանականօրէն ջնջուած է հիմա։ Սիրահարուած չեմ, չեմ... չեմ... չեմ... բայց և այնպէս, կարծես թէ նոր ոյժ մըն եմ վերստացած։ Որքա՜ն տարօրինակ է կոյր բանաստեղծին՝ իր թշնամանքը այդպէս մոռանալը։ Միշտ կը հանդիպինք իրարու այժմ։ Սա թերևս ըլլայ այն պատճառով, որ ես մտաւոր պաշարի պէտքը կը զգամ ու ան ալ հաճոյք կը զգայ հայթայթելու։ Ծայրայեղօրէն շնորհալի ու ազնիւ է միշտ...

---

## IV

Քանի մը օր վերջ Քոլըն Քին, կոյր բանաստեղծը, իր ծառային՝ Թօմփսընի միջոցով նամակ մը կը ղրկէ երկու կանանց՝ հրաւիրելով զիրենք թէյի։ Միս Ուիր երկար խոկալով ու խորհրդակցելով Ֆէնէլայի հետ այդ քայլի պատշաճութեան ու անպատշաճութեան վրայ, վերջապէս կորոշեն երթալ։

Միս Ուիր կը խնդրէ Ֆէնէլայէ իր սև մետաքսէ հագուստը արդուկել և հնդկական շալը դուրս հանել սնտուկէն, որպէս զի ատոնք հագնի գացած պահուն։

—Սև զգեստով շատ տաք չըլլա՞ր այս օդին,—կը հարցնէ Ֆէնէլա։

—Իմ օրերուս, — կը պատասխանէ միս Ուիր,—այցելութեան վայելչագոյն գոյնը սևն էր։ Օր մը, սակայն, որովհետև մարդասպանուհի մը որոշեց գլխատուիլ այդ գոյնով հանդերձի մէջ, կանայք թողուցին զայն։ Ես այդպիսի մանր դէպքերէ չեմ ազդուիր։

Ու երկուքը միասին, հանդիսաւորապէս հագուած, կուղղուին Քոլսըն Քինի տունը։

Դուռը կը բանայ վերջնոյն հաւատարիմը, Թոմփսըն, պատշաճօրէն զգեստաւորուած։ Երբ ծառան հիւրերուն անունը խնդրելու վրայ է, վրայ կը հասնի բանաստեղծը և կառաջարկէ պարտէզ իջնել, ուր պատուիրուած է բերել թէյը։ Պարտէզը հրաշալի է, մայրիներու ընտիր հովանիին տակ։ Սեղանին վրայ կը նախագահէ միս Ուիր։

Տեսակ մը մոգական զուարթութիւն պաշարած է կոյր բանաստեղծը։ Կը խօսի ու կը խնդայ չարունակ և իր ուրախ տրամադրութենէն միս Ուիր անգամ կազդուի։

Երկար նստելով՝ թմրութիւն մը կուգայ վրանին։ Քոլսըն Քին կը խնդրէ միս Ուիրէ գալ ու ծնեբեկի ածուները քննել, ուր, այդ պահուն իսկ, կը գտնուէին խոզերը։ Վերջինս կը մերժէ երթալ և կը յայտնէ, թէ ինք կը սպասէ հոն, որպէս զի Ֆէնէլա անձամբ տեսնէ և հաղորդէ իրեն։ Ու այսպէս, պր. Քին ու Ֆէնէլա միասին կիջնեն վար, թողլով միս Ուիր մինակ, որ, օդին ջերմութեան տակ, թուլացած կը սկսի մրափել...

---

## V

### Պարտէզին մէջ

Խիստ տաք էր ծնեբեկի ածուներուն մէջ, և խոզերը մեծ ծակեր էին բացած հոն։ Անոնցմէ մէկը-երկուքը ծոյլ յոխորտանք մը ցոյց տուին Բօրիսի (շան), բայց չշարժեցան։ Հըսկայ որսաշունը արհամարհոտ կերպով փընչաց և որոշեց պահ մը վերջ կարգադրել անոնց հետ, երբ մէկը ներկայ չէր։

—Տարօրինակ տեղ մըն է այս՝ մէկուն ցոյց տալու,—ըսաւ Քոլսըն Քին.—այսուհանդերձ, ուզեցի որ տեսնէք զայն։ Որքա՞ն

ժամանակ կայ որ հանդիպեցանք մենք առաջին անգամ։

—Չորս ամիս,—յայտնեց Ֆէնէլա։—Կարծես դեռ երէկ էր։

—Եւ դո՛ւ. բայց չէ՞ք ուզեր մի քիչ նստիլ այդ հին նըստարանին վրայ. դո՛ւ երջանի՞կ էիր։

Ֆէնէլա նստաւ, սակայն կոյրը ոտքի էր, շան օձիքէն բռնած։

—Երջանի՞կ,—ըսաւ Ֆէնէլա։—Այո՛, երջանիկ էի մինչեւ...

—Մինչե՞ւ...

—Ամիս մը առաջ։ Ապա դէպք մը պատահեցաւ։ Ո՜հ...

—Ի՞նչ է։ Կերպով մը կրնա՞մ օգնել ձեզ։

—Ո՛չ։

Ձայնի յուսահատ բեկանում մը ունեցաւ Ֆէնէլա։

—Ո՛չ մէկը կրնայ օգնել ինձ, ո՛չ մէկը։

Քոլսըն Քին սպասեց, որ օրիորդը կազդուրուի, սակայն արցունքները դէմքին վրայէն ու երկար մատներուն միջէն վար կը հոսէին։ Թէպէտեւ շան օձիքին պրկումը փոքր ինչ սեղմեց, բայց ուէ նշան չարտայայտեց՝ մինչեւ աղջկան յուզումը անցաւ։

—Գիտեմ թէ յիմարութիւն է,—ըսաւ Ֆէնէլա.—կատարեալ յիմարութիւն։ Սակայն կը տեսնէք որ աղջիկ մըն եմ լոկ եւ... մէկէն հերոսուհի մը չեմ կրնար դառնալ։

—Կարծեմ թէ կրնաք, եթէ հարկ ըլլայ։

—Խիստ անողոք էր այդ. ու ճիշտ այն պահուն՝ երբ կը սկսէի մտածել թէ՝ գուցէ կարողանայ մի քիչ սիրել զիս։

—Ի՞նչ էր այդ։

Ֆէնէլա բարձրացուց գլուխը խրոխտաբար։

—Չեմ կարծեր թէ ճշգրտօրէն պատմեցի ձեզ հոս գալուս շարժառիթը։

—Բաւական ծանօթ եմ։

—Ես եկայ արցունքի հացը ճաշակելու,—շարունակեց օրիորդը,—ստրուկ մը դառնալ ու հօրս միս Թրէսօքի դէմ գործած մէկ անիրաւութիւնը քաւել։

—Ա՜հ,—բացագանչեց ան։—Հիմա հասկնալ կը սկսիմ։

—Երբ հասայ հոս, միս Թրէսօք հեռացաւ միեւնոյն գիշերը, առանց զիս տեսնելու։

—Վստա՞հ ես բոլորովին։

—Բոլորովին։ Միս Ուիր մնաց միայն, ու Մարթա Բրէդըլ։ Միս Ուիր առհասարակ ազնիւ գտնուեցաւ ինծի, մեծապէս ազնիւ։ Թէպէտեւ քանի մը անհաճոյ դէպքեր պատահեցան, սակայն կարծեմ թէ կը սիրէ զիս։

—Այո՛, վստահ եմ որ կը սիրէ։

—Մտերմութեան մտայ միս Ուիրի հետ և յայտնեցի իրեն իմ բոլոր ապագայի ծրագիրներս և յոյսերս։ Միս Թրէսօքէ ծածկելիք բան մը չկար, բայց, չար րոպէի մը, միս Ուիր խօսած է միս Թրէսօքի՝ գրքիս մասին։

—Լաւ...

—Ու ամեն ինչ կարժէր այդ ինծի. ամէ՛ն ինչ։ Միս... Ջուր... ամեն բան։

Ցէնէլա ընդհատեց ու Թախծալիօրէն դիտեց հեռուն, առանց բան մը տեսնելու։

—Ամէ՛ն ինչ կարժէր այդ ինծի. ամէ՛ն ինչ,—շարունակեց։ —Ատոր մէջ էի ամփոփած իմ ամբողջ երազներս և յոյսերս, բաղձանքներս ու վախերս։ Հերոսներուս կեանք էի ներշնչած. իրենց բերկրանքով ես ալ կը բերկրէի։ Երբ վշտահար էին, ես ալ նոյնպէս կարտասուէի։ Որքա՜ն իրական էին անոնք ինծի։ Անոնցմէ մէկը սիրուն աղջիկ մըն էր, սիրահարուած։ Թիւրիմացութիւն մը տեղի էր ունեցած իր ու սիրահարին միջև. Թեթև յիմարական կռիւներ և այլն։ Աղջիկը ինծի կուգար խնդիրը կարգադրելու համար. ու ես հաճոյք մը կը զգայի իր սիրուն պզրտութեանց համար արդարացումներ հնարելու, մինչև որ սիրահարը կրկին իր ոտքը ինկաւ։ Ինձ հետ, իմ շուրջս կապրէին անոնք։ Երբ միայնակ ու տխուր զգայի, կերթայի երևակայութեանս այս երազ-մանուկներուն քով ու կը գգուէի զիրենք։ Մերթ խոժոռ ու վիրաւորուած կը զգային անոնք և ուզածըս չէին կատարեր։ Օրէ օր կը հսկէի զիրենք։ Փորձութիւններ, նեղութիւններ ու Թիւրիմացութիւններ էին տեղի ունեցած. մաքրագործուած էին տառապանքով։ Ու ապա երջանիկ ըրած էի զիրենք, խի՜ստ երջանիկ... Այս երազի մանուկները կը վերադառնային ինծի գիշերուան անքուն ժամերուս, շնորհակալ ըլլալու իրենց գողտրիկ կեանքերուն ու այն բերկրանքին համար, որ ընծայած էի անոնց. և այն ծաղկաշար ուղիներուն համար՝ ուր հիմա իրենց ցաւամաշ ոտքերը կը կոխէին։ Կը սիրէ՜ զիրենք... Կը սիրէ՜... Սիրուելու միակ բաներն էին որ ունէի... Ապա նամակ մը եկաւ միս Թրէսօքէ։ Գիրքը իրեն յանձնուելու էր՝ ջնջուելու համար։ Ամբողջ աշխատանքս, բերկրանքս, ցաւս՝ ոչնչութեան պէտք է վերածուէին։ Ու այս եղանակով է որ իր քինախնդրութեան գոհացումը տուաւ վերջապէս։

—Եւ դու յանձնեցի՞ր զայն։ Տուի՞ր այդպէս սրտիդ արիւնը։

—Այո։ Հօրս Թշնամին էր ան, այժմ իր վրէժը լուծեց իմ վրաս։ Թերևս վրէժը միակ բանն է, որուն համար կապրէր ան։

Շատ քաղցր ըլլալու է այդ իրեն։ Երեւակայեցէք թէ միս Թրէսօք սնուցանէ այդ տարիներով, որպէս զի ապա նա մեռնի և խոյս տայ անոր բարկութենէն։ Կէս մը յիմարութեան մղած ըլլալու է այդ զինքը։ Ու այսպէս, երբ հոս եկայ ես, պարկեշտօրէն վճռելով հեզ, համբերատար ու երկայնամիտ ըլլալ, ինք հեռացաւ, միս Ուիրի թողլով իմ ինչպէս լինելս հաղորդել իրեն։ Չեմ կրնար գանգատիլ։ Կը սիրէի հայրս, սակայն անիրաւ էր։ Նա գրեթէ անոր սիրտը ջախջախեց՝ լոկ իր հաճոյքին համար. ու ան ևս գրեթէ իմս բեկանեց՝ իր բարկութեան գոհացում տալու։

—Ու այլ ևս բան մը չըսա՞ւ։

—Ո՛չ։ Ընդունեց զոհողութիւնս՝ որպէս թէ ատի ոչինչ արժէր ինձ։ Դեռ ևս շատ պիտի պահանջէ ինձմէ։

—Բաւական չէ՞ր այդքանը։

Ֆէնէլա հառաչեց։

—Ի՞նչ մտածելու էք իմ մասին, որ նեղութիւններս կը պատմեմ ձեզ, երբ ձեր հիւրն եմ։ Ցիրաւի, նպատակէս հեռու էր այդ։ Ամբողջ վերջին ամիսը միենոյնն եմ եղած միս Ուիրի հանդէպ, առանց բառ մը խօսելու թէ՝ որքան կը տառապիմ։ Գիշեր մը, սակայն, միս Ուիր սենեակս գալով զիս գտաւ լալագին։ Ըսաւ թէ մեծապէս կը ցաւէր, թէ՝ ատելութիւն ու քինախնդրութիւն միշտ կը վերադառնային զանոնք տածողներուն՝ դառնութեամբ և վշտով։

—Չէ՞ս կարծեր թէ կատարածդ բաւ է այլ ևս։ Այդպիսի զոհողութիւն մը բաւական ըլլալու է անշուշտ։

—Չեմ գիտեր,—ըսաւ աղջիկը յուսաբեկ։—Աւելի ի՞նչ կրնամ ընել։ Կրնամ Հայաստան երթալ, բայց ապա...

Կանգ առաւ՝ յանկարծ Երասդոսը յիշելով։ Եթէ վերադառնար, այդ չէ՞ր նշանակեր, թէ կը սիրէր զինքը։ Ու Ֆէնէլա վստահ էր, որ չէր սիրեր զայն։ Կատարելապէս վստահ։ Նոյն իսկ ինքզինքին վրայ բարկանալ սկսաւ այդպիսի անզգայութեան համար։ Ինչպիսի՜ թնճուկաւոր կարժերու կը վերածէին մարդիկ իրենց կեանքերը, և ինչպէ՜ս այդ թնճուկը քակելու ճիգերը աւելի գէշի կը փոխէին զանոնք։ Նախապէս՝ ամեն ինչ զուարթ ու քաղցր էր. հիմա ամեն ինչ մռայլ ու վշտալի։ Դատապարտուած էր ապրիլ տանիքին տակ ծեր կնոջ մը, որ կատէր զինքը։ Երիտասարդութեան ամեն բերկրանք պիտի խամրէր այսպիսի նսեմ միջավայրի մը մէջ։ Մտաբերեց միսիօնարական անպաճոյճ շրջանակը՝ իր եղական, խաղաղ մթնոլորտով, ու հոգին կոտտալ սկսաւ մանկիկներուն գգուանքին հա-

մար՝ վզին շուրջը։ Միս Թրէսօքի այս հնադարեան թախծապատ տան մէջ, մանկան մը խնդուքը ճառագայթած չէր երբէք։ Ցնծութիւն և բերկրանք արգիլուած բաներ էին։ Իր երազի մանուկները յափշտակուած էին իրմէ ու ջնջուած։ Պիտի ըսէր միս Թրէսօքի թէ՝ չէր կրնար մնալ այլ ևս։ Կը ցաւէր, բայց անշուշտ տառապած էր լաւական։ «Թողէք իմիններուս մօտ երթալ ու անոնց հետ բնակիլ»,— այս էր իր աղօթքը։ Սակայն և այնպէս, Երասդոս պիտի ըլլար հոն։ Չէր կրնար տեղ մը երթալ, բան մը ընել։ Փախուստի ճանապարհ չկա՛ր։ Ու... ու Երասդոս կը սիրէր զինքը։

Քոլսըն Քին քիչ մը ևս սեղմեց շան օձիքը։

— Ի՞նչ պիտի ընես։ Խորհա՞ծ ես բանի մը մասին։

— Ո՛չ,— ըսաւ Ֆէնէլա, զգացումի յանկարծական յեղաշրջումով մը։— Թերևս վախճանը լաւ ըլլայ, որովհետև ես ջանացի իմ պարտականութիւնս կատարել։ Երբ միս Թրէսօք վերադառնայ, պիտի աշխատիմ ատեն մը ևս հաճեցնել զինքը։ Ապա տեղ մը պիտի երթամ վարժուհի ըլլալու ու թերթերուն գրելու և...

— Գիտե՞ս ինչ կը նշանակէ այդ։ Անյոյս տաժանքի և գերութեան կեանք մը։ Այնուհետև կուգայ ծերութիւնը, և յետոյ վախճանը։

Ֆէնէլա ոտքի ելաւ ներշնչուած հայեացքով մը։

— Դա աւելի լաւ է, քան թէ ժանգոտիլ, ճաշակել հացը կնոջ մը՝ որ կատէ զիս, որ զիս ապերջանիկ ընել կուզէ, որ միշտ նորանոր չարչարանքներ կը հնարէ ինծի համար։ Մէկ նոր փորձ մը ևս պիտի ընեմ, և ապա ամեն ինչ պիտի վերջանայ միս Թրէսօքի հետ։ Այնուհետև Հայաստան պիտի երթամ։

—Կուզէի ուրիշ միջոց թելադրել, եթէ կրնայիք հինգ րոպէ զոհել ինձ՝ միս Ուիրի վերադառնալէ առաջ։

—Շատ ազնիւ էք։ Ներողամտութիւն կը պարտիմ այս ժայթքումիս համար։ Սակայն այնքան միայնակ էի՝ որ ուր դառնալս չէի գիտեր մխիթարութեան համար։

—Միայնա՞կ,— ըսաւ ան.— այո՛, միայնակ ես արևուն տակ, ու ես ալ միայնակ եմ եղած՝ խաւարին մէջ։ Խորհա՞ծ ես երբէք, որ այս ժպտուն դէմքը, որ կը կրեմ, դիմակ մըն է լոկ։ Խորհած չե՞ս երբէք, որ մի քիչ արիութիւն է հարկաւոր՝ իմինիս նման կեանք մը ապրելու համար։ Ու այս գեղեցիկ աշխարհը կնքուած մատեան մըն է ինծի համար, զոր պիտի չը կրնամ բանալ երբէք։

—Ո՜հ, պր. Քին, կը ցաւիմ ձեզ համար, խիստ կը ցաւիմ։

—Աստուած քեզ ալ տուած է ցաւի բաժինդ, բայց զրկած չէ քեզ լոյսէ։ Ան խլած է քենէ քու գիրքդ, բայց զրկած զիս իր գրքէն։ Իմ ամբողջ օրերս պէտք է անցնեմ խաւարի մէջ, երգելով այն բոլորը՝ որ տեսած եմ երբեմն, խեղդելով հոգւոյս մէջ այն բոլոր հրճուալիր անուրջները՝ որ ունեցած էի ժամանակին։ Մարդիկ, տեսնելով զիս շուկան, երես կը դարձնեն ինծմէ՝ ըսելով. «Աստուծոյ ձեռքը այս երգողին վրայ է։ Նա մեռած է կեանքի համար, ինչպէս և ատոր ամեն նպատակներուն, յոյսերուն և վախերուն համար։ Այսուհետև նա պիտի լսէ մեծ ձեռնարկներու մասին, լոկ գիտնալու թէ՝ ինք ոչ կրնայ կատարել զանոնք և ոչ ալ կը համարձակի. այսուհետև, փոքրիկ մանկան նման պիտի առաջնորդուի ան, ու այն բոլորը, որ տեսած էր ժամանակին, աստիճանաբար պիտի մարին, մարին ու մարին, մինչև որ ամբողջովին ցնդին յիշողութենէն. իր շուրջի աշխարհը տեսնելու համար աչք չունի ան. ոչ ալ փողահար լեզու՝ իր նմանները ազատութեան և իրաւունքի դատին մղելու, կամ հնչական կոչ մը՝ հալածանքը կասեցնելու։ Ո՛չ օգտակարութիւն, ո՛չ հեռապատկեր, ո՛չ նպատակ, բայց եթէ բեկոր մը անցեալի, կենդանի ոգի մը, որ կը քալէ դողահար, անմիտ շրթունքներով ու խարխափուն ձեռքերով կեանքի ճանապարհներուն մէջը, այլ և չի պատկանիր անոնց՝ բեկորը հաւանական հաստատուն նպատակի և աներկիւղ հաւատքի տէր մարդու մը՝ մարդկային սրտերը բարձր ու վսեմ իղձերու մղող մէկու մը»։ Ո՜հ, եթէ միայն Աստուած վերաշնորհէր ինծ տեսողութիւնս։ Ո՛չ թէ ինծի համար։ Ո՛չ թէ իմ երջանկութեանս համար, այլ օգնելու հալածեալին ու տկարին, թիկունք ըլլալու անպաշտպանին, խօսելու մարդկային սրտերուն բանաստեղծ-լեզուով, որովհետև բանաստեղծը Աստուծոյ քահանան է։ Աստուած, վերադարձուր ինծ տեսողութիւնս... տեսողութի՜ւնս...

Ցէնէլա, ձեռքը անոր բազուկին վրայ դրաւ։ Ի՞նչ էր իր աննշան ցաւը բաղդատմամբ անորին։ Բանաստեղծ մըն էր ան, մէկը՝ որմէ աշխարհը շատ բան կակնկալէր։ Ու իր զգացած ցաւը աւելի նուազ էր իրեն համար, քան թէ այն բաներուն համար՝ որոնք անկատար էր թողուցած՝ չկրնալով աշխարհի վիշտը մասամբ մը թեթևցնել։ Որքա՜ն փոքր, ճղճիմ ու ողորմելի կերևէր ինք անոր մօտ, որ բաց գլխով կանգնած՝ երկնակամարին կը նայէր, առանց տեսնելու։

Քնքշութեամբ բարձրացուց զայն ու շրթունքներուն տարաւ։

—Ներէ ինծ։ Քառասուն տարեկան եմ, և մարդ շատ փի-

լիսոփայ մը չի դառնար քառասունի մէջ։ Գոնէ, բան մը կայ որ կրնամ ընել։

Վարանեցաւ պահ մը ու ապա նստաւ մօտը։

— Ամիսներէ ի վեր ճանչցայ քեզ ու հսկեցի վրադ։ Երբեմն ինծի այնպէս երեւցաւ, որ Աստուած պիտի լսէր աղօթքս, որ տեսողութիւնս վերադարձնէր. որ պիտի ղրկէր ինծ մէկը՝ որ բռնէր ձեռքէս ու խօսէր ինծի իր արարածներուն վրայ, հողային, օդային ու ջրային։ Միայնակ մնացի խաւարի ու մահուան հետ։ Սիրեցի անգամ մը, ու ան մեռաւ։ Չէի կրնար նոյն իսկ իր դէմքն ալ տեսնել։ Բնաւ չըսաւ ինծի, թէ որքան հիւանդ էր, մինչեւ որ իր վերջին ուղեւորութիւնը հասաւ։ Գիշեր մը դէմ-դէմի նստած էինք սենեակը։ Խօսեցայ։ Պատասխան չկար։ Խարխափելով մօտեցայ, դրի ձեռքս դէմքին վրայ. մեռած էր... Ատկէ ի վեր միայնակ եմ եղած, միշտ միայնակ՝ իմ կորսուած կեանքիս հետ։ Բայց դուն տակաւ քաղցրացուցիր զայն, յուսալ տուիր ինծի։ Կը սիրեմ քեզ, որդեա՛կ։ Ծանօթացայ քու ամբողջ ցաւերուդ. ջանացի նուազեցնել զանոնք։ Ու արդ, վշտիդ ու նեղութեանդ մէջ, կը խնդրեմ քեզ կինս ըլլալ։ Գուցէ մղեալ մի՛ ամուսնանար հետս։ Միայն՝ եթէ կը սիրես զիս...

Սակայն մինչ ան կը խօսէր, բախտի մէկ արտակարգ քմահաճոյքով մը՝ Ցէնէլայի մտածումները վերադարձան, եւ՝ Պօլսոյ երիտասարդին վրայ, այն երիտասարդին՝ որ նոյնպէս կը սիրէր զինքը եւ որ երկնքին մօտեցող նկուղի մը մէջ՝ կը ճըգնէր իրեն արժանի ըլլալու համար։ Գթոյ ուժեղ հոսանք մը Երասդոսի նկատմամբ՝ անէացուց Քոլըլն Քինը։ Անգամ մը եւս Սվանգ էր ան, լուսնին տակ, Երասդոս ոտքերուն մօտ ծնկաչոք։ Աղերսական աչքերով իրեն կը նայէր, իր շրթները պերճ՝ յուզումով, սիրով եւ երիտասարդութիւնով։ Ան գիտէր, թէ օր մը իր բոլոր յոյսերը, վախերն ու մտածումներն անոր սիրոյն պիտի ըլլային եւ ո՛չ թէ քովը եղողին համար։ Կրնար կարեկցիլ Քոլըլն Քինի, բայց ո՛չ սիրել։ Մարդկային կեանքի եղերերգութեան մէկ մասնիկն էր որ՝ ինք այս մարդուն արահետին մէջ մտնէր, եւ ժամանակաւորապէս փոխ տար իր աչքերը անոր՝ որով տեսնէր ան աշխարհը աղջկան նորատի տեսիլքով, լոկ վերջը աւելի թանձր մթութեան մէջ խորասուզուելու համար։ Սակայն ի՛նչպէս յայտնել այս իրեն։ Ի՞նչպէս արտայայտել իր երախտագիտութիւնն ու գորովը անոր բոլորը ազնուութեանց համար։ Անշուշտ, անշուշտ կը հասկնար ան իր լռութեան պատճառը։ Հեռու էր իր լայն հոգին քէն պահելէ։ Պիտի հասկնար

ու ներէր ան իր կցած նորագոյն վշտին համար՝ անոր անյոյս օրերուն։

Ու Քոլըն Քին հասկցաւ։ Թեւերը երկու քովէն վար ինկան թուլօրէն։ Ծերացած ու կծկուած երեւցաւ, որպէս թէ մայրիներու և հովանիին մէջ փախչիլ ուզէր՝ հոն ինքզինքը ծածկելու։ Բայց նոյն այս ջախջախիչ հարուածին ներքև իսկ մարդուն բնածին ազնուականութիւնը արտայայտեց ինքզինքը։

—Պէտք է մոռնաս որ այս յիմարութիւնը գործեցի, Ֆէնէլա։ Այն աչքերը, որոնցմով օր մը պիտի տեսնեմ քեզ, պիտի վերադառնան ինծի ուրիշ աշխարհի մը մէջ, բայց ո՛չ այստեղ։ Դուն քուկդ ալ պէտք չէ կուրացնես՝ հոս ինծի տալով զանոնք։

Աղջկան արցունքները հոսիլ սկսան։

—Շատ կը ցաւիմ։ Շա՛տ, խիստ շատ կը ցաւիմ։ Պէտք չէ որ...

Մատները անոր շրթունքներուն վրայ դրաւ։

—Մի՛ ցաւիր երբե՛ք, Ֆէնէլա, որ կը սիրեմ քեզ։ Ես ըսելու չէի այդ։

—Դուն զիս փրկել ուզեցիր։ Ես...

—Ո՛չ, ես ինքզինքս փրկել ուզեցի խաւարէն,—պատասխանեց ան թեթեւօրէն։—Հիմա միս Ուիլըին վերադառնանք։ Կարծեմ քեզ ըսելիք մը ունի, բան մը՝ որ գիտցայ կամ կռահեցի ես բաւական առենէ ի վեր։

—Բռնէ՛ ձեռքէս ու իրեն երթանք։ Այս օրէն անդին լաւագոյնս պիտի մտածեմ իմ մասիս՝ քանի որ դուն... քանի որ դուն...

—Կը հասկնամ,—ու ձեռքը աղջկան երկարեց։

Միս Ուիլ կը քնանար դեռ ևս, բայց արթնցաւ խռնջիւնով մը և բարկացաւ Ֆէնէլայի՝ Քոլըն Քինը այդ կերպով այս ու այն կողմ առաջնորդելուն համար։

—Յիրաւի, պր. Քին, — ըսաւ դաժանութեամբ,—գրեթէ մոռցնել տուիր ինձ ձեզ հաղորդելիք լուրս։ Միս Թրէսօք վաղը գիշեր կը վերադառնայ և կը հրաւիրէ ձեզ ճաշի գալ։

—Սիրով։ Ապա երկուքս միասին կը հաշտուինք։

Միս Ուիլ մեծապէս գրգռուած կերեւէր։

—Մի՛ խօսիր ինծի,—ըսաւ Ֆէնէլայի։—Վաղը երեկոյ ամէն ինչ կիմանաս։

Հեռո՛ւն, Պօլսոյ մէջ, Երասողոս, ըստ իր ամէն գիշերուայ սովորութեան, Ֆէնէլայի վերջին նամակը առջին՝ նստած էր։ Պատանին կախեց գլուխը պահ մը սեղանին վրայ։ «Բնա՛ւ չպիտի սիրէ զիս ան,—ըսաւ, ձայնին մէջ տարակոյսի խեղդու-

քով մը։ —Բնաւ չպիտի սիրէ զիս։ Պէտք է կրեմ այդ բոլորը»։ Այնուհետեւ գնաց ննջասենեակ, անմխիթարօրէն զետեղեց նամակը իր սովորական տեղը եւ սկսաւ գործի։ Տեսակ մը դարման էր իր դժբախտութիւնը մոռնալու՝ Պօլսոյ փողոցներուն վրայ ազդու «առաջնորդող» մը գրելով։ Մէկուն ալ հոգը չէր քայլ մը առնել՝ զանոնք բարեփոխելու համար, բայց եւ այնպէս օրհնեալ մխիթարութիւնը կար դեռ աշխատանքի։ Ապագային, որոշեց աւելի տաժանելիօրէն աշխատիլ։ Օր մը, թերեւս, իր առիթն ալ գար։ Եւ ապա՝ Ֆէնէլմն...

Ջ. Բ. ԲԸՐՋԻՆ

Թարգմ. անգլ. Մինաս Ցոլակ

(Կը շարունակուի)

---

# ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԻՒՆԸ*)

*Լ. Ն. Տօլստօյի*

---

Երբևիցէ ես կը պատմեմ իմ կեանքի պատմութիւնը, որ և՛ յուզիչ է, և՛ ուսանելի իմ երիտասարդական այդ տասը տարիներում։ Կարծում եմ, որ շատ շատերն են զգացել նոյնը։ Ես ամբողջ հոգով կամեցել եմ լինել լաւ. սակայն ես երիտասարդ էի, ունէի կրքեր, և երբ փնտռում էի լաւութիւն՝ ես մընում էի միայնակ, միանգամայն միայնակ։ Իւրաքանչիւր անգամ, երբ փորձում էի արտայայտել այն ամենը, ինչ որ կազմում էին իմ ամենասրտագին ցանկութիւնները, այն է՝ որ ես կամենում էի բարոյապէս լաւ լինել, ես հանդիպում էի արհամարհանքի և ծաղրի, բայց հէնց որ անձնատուր էի լինում սուր կրքերի՝ ինձ գովում ու խրախուսում էին։

Փառասիրութիւն, իշխելասիրութիւն, ընչաքաղցութիւն, հեշտասիրութիւն, հպարտութիւն, բարկութիւն, վրէժխնդրութիւն—սրանք բոլորը յարգվում էին։

Անձնատուր լինելով այդ կրքերին՝ ես նմանում էի մեծերին և զգում էի, որ ինձանով գոհ են։ Իմ բարի հօրաքոյրս՝ մի մաքուր արարած, որի հետ ես ապրում էի՝ միշտ ինձ ասում էր, թէ նա ոչինչ աւելի չէր ուզենայ, քան այն, որ ես կապ ունենայի մի ամուսնացած կնոջ հետ. «rien ne forme un jeune homme, comme une liaison avec une femme comme il faut»; մի այլ բախտ էլ էր կամենում նա ինձ համար. դա այն էր, որ ես լինէի ադիւտանտ, և առաւել ես լաւ՝ Թագաւորի մօտ. առաւել մեծ բախտն էլ—դա այն էր, որ ես ամուսնանայի չափազանց հարուստ աղջկայ հետ և որ իբրև արգասիք այդ ամուսնութեան՝ ունենայի ըստ հնարաւորութեան մեծաքանակ ստրուկներ։

---

*) «Արօր» № 1.

Առանց սարսափի, արգահատանքի և սրտի ցաւի չեմ կարող վերյիշել այդ տարիները։ Պատերազմի մէջ՝ ես մարդիկ էի սպանում, հրաւիրում էի մենամարտի, որպէս զի էլի սպանեմ. Թղթախաղում տարվում էի, գիւղացիների աշխատանքը վատնում, տանջում նրանց, բռնաբարում, խաբում։ Ստախօսութիւն, գողութիւն, անբարոյականութեան բոլոր տեսակները, արբեցողութիւն, բռնութիւն, մարդասպանութիւն... Չկար մի ոճիր, որ ես գործած չլինէի, և այդ բոլորի համար իմ հասակակիցները ինձ գովում էին ու համարում և այժմ էլ համարում են համեմատաբար աւելի բարոյական մարդ։

Այդպէս ես ապրեցի տասը տարի։

Այդ ժամանակ ես սկսեցի գրել՝ դրդուած փառասիրութիւնից, ընչաքաղցութիւնից և հպարտութիւնից։ Իմ գրուածքների մէջ ես նոյնն էի անում, ինչ որ կեանքի մէջ։ Անուն և փող վաստակելու նպատակով, որի համար ես գրում էի, անհրաժեշտ էր թագցնել լաւը և ասել վատը։ Ես այդպէս էլ անում էի։ Քանի՜ անգամ ես փորձել եմ սառնասրտութեան և նոյն իսկ թեթև ծաղրի դիմակով սքօղուած՝ իմ գրուածքներիս մէջ թագցնել այն ձգտումներս դէպի բարին, որոնք կազմում էին իմ կեանքի իմաստը։ Եւ ես հասնում էի իմ նպատակին. ինձ գովում էին։

Քսան-վեց տարեկան հասակումս, պատերազմից յետոյ, ես եկայ Պետերբուրգ և մտայ գրողների շրջանը։ Ինձ ընդունեցին իբրև իւրայինի, ինձ շողոքորթում էին։ Եւ ես, տակաւին անկարող՝ շուրջս դիտելու, արդէն իւրացրի գրող դասակարգի այն մարդկանց հայեացքները, որոնց հետ ես ծանօթացրել էի և որոնք իմ նախկին փորձերը՝ լաւ դառնալու վերաբերմամբ միանգամայն ոչնչացրին իմ մէջ։ Այդ հայեացքները իմ կեանքի սանձարձակութեանը իբրև հիմք՝ դրեցին մի թէօրիա, որը և նրան արդարացնում էր։

Կեանքի նկատմամբ այդ մարդկանց—իմ ընկերակից-գրողների—ունեցած կարծիքը կայանում էր նրանում, որ կեանքը ընդհանրապէս առաջ է գնում զարգանալով և որ այդ զարգացման մէջ մասնակցութիւն ունենք՝ մտքի մարդիկս, իսկ մտքի մարդկանց մէջ գլխաւոր ազդեցութիւն ունեցողը մենք ենք՝ գեղարուեստագէտներս, բանաստեղծներս։ Մեր կոչումն է՝ ուսուցանել մարդկանց։ Բայց որպէս զի իմ առջև չկանգնի այն բնական հարցմունքը, թէ ինչ գիտեմ ինքս և ինչ եմ ուսուցանում, այդ թէօրիայի մէջ բացատրուած էր, որ դա գիտենալ հարկաւոր չէ, քանի որ գեղարուեստագէտն ու բանաստեղծը

ուսուցանում են անգիտակցօրէն։ Ես համարվում էի հրաշալի գեղարուեստագէտ ու բանաստեղծ, ուստի և ինձ համար չափազանց հեշտ էր իւրացնել այդ թէօրիան։ Ես—գեղարուեստագէտըս, բանաստեղծս—գրում ու ուսուցանում էի, չիմանալով թէ ինչ եմ ուսուցանում։ Դրա համար ինձ վճարում էին դրամ, ես ունէի հիանալի սնունդ, բնակարան, կանայք, հասարակութիւն. ես անուն ունէի։ Ուստի և այն, ինչ որ ես ուսուցանում էի, չափազանց լաւ բաներ էին։

Բանաստեղծութեան նշանակութեան և կեանքի զարգացման դաւանանքը՝ իսկապէս մի դաւանանք էր, և ես նրա քուրմերից մէկն էի։ Լինել նրա քուրմը՝ չափազանց դուրեկան էր և ձեռնտու։ Եւ ես բաւական երկար ապրեցի այդ դաւանանքով, առանց կասկած ունենալու նրա ճշմարտութեան մասին։ Սակայն այսօրինակ կեանքի երկրորդ և մանաւանդ երրորդ տարին ես սկսեցի կասկածել այդ դաւանանքի անսխալականութեան վրայ և սկսեցի վերլուծել այն։ Կասկածիս առաջին առիթը այն եղաւ, որ ես սկսեցի նկատել, թէ ինչպէս դրա քուրմերից ոչ բոլորն են համաձայն իրար հետ։ Ոմանք ասում էին՝ մենք-ամենալաւ և ամենաօգտակար ուսուցիչն ենք. մենք ուսուցանում ենք այն, ինչ կարևոր է, իսկ ուրիշները սխալ են ուսուցանում։ Սակայն ուրիշները ասում էին. ոչ, մենք ենք իսկականները, իսկ դուք սխալ էք ուսուցանում։ Եւ նրանք վիճում էին, խռովում, հայհոյում, խաբում, անզգամութիւն անում իրար դէմ։ Բացի այդ՝ նրանց մէջ կային շատերը, որոնք չէին մտածում, թէ ո՛վ է մեղաւոր և ով՝ արդար, այլ ուղղակի հասնում էին իրանց շահադիտական նպատակներին մեր այդօրինակ գործունէութեան օժանդակութեամբ։ Այս բոլորը ստիպեցին ինձ կասկածանքի մէջ ընկնելու մեր դաւանանքի ճշմարտութեան նկատմամբ։

Բացի դրանից, կասկած ունենալով գրողների դաւանանքի ճշմարտութեան վրայ, ես սկսեցի ուշադրութեամբ դիտել նրա քուրմերին և համոզուեցի, որ այդ դաւանանքի համարեա բոլոր քուրմերը՝ գրողները՝ անբարոյական մարդիկ են, և գլխաւորապէս վատ մարդիկ, բնաւորութեամբ աննշան,—առաւել ստոր այն մարդկանցից, որոնց ես պատահում էի իմ անցեալ շուայտ զինուորական կեանքում,—սակայն ինքնավստահ, ինքնաբաւական, ինչպէս որ լինում են միանգամայն սուրբ մարդիկ, կամ այնպիսիք, որոնք նոյն իսկ չգիտեն, թէ ինչ է սրբութիւնը։ Այդ մարդիկ ինձ համար դարձան զզուելի, և ես

ինքս էլ ինձ համար եղայ զզուելի, ապա հասկացայ, որ այդ դաւանանքը միմիայն մի պատրանք է։

Սակայն տարօրինակ է այն, որ ես թէպէտ դաւանանքի այդ ամբողջ կեղծիքը շուտով ըմբռնեցի և հրաժարուեցի նրանից, բայց այդ մարդկանց ինձ տուած աստիճանից—գեղարուեստագէտի, բանաստեղծի, ուսուցչի—ես չհրաժարուեցի։ Ես միամտօրէն կարծում էի, թէ քանի ինքս բանաստեղծ եմ ու գեղարուեստագէտ, ապա ուրեմն կարող եմ բոլորին ուսուցանել, առանց իմանալու թէ ինչ եմ ուսուցանում։ Եւ ես այդպէս էլ անում էի։

Այդ մարդկանց հետ ունեցած մերձաւորութեամբս ես ձեռք բերեցի մի արատ ևս՝ հիւանդագին չափերով զարգացած հպարտութիւն և խելագար համոզումն, որ ես կոչուած եմ մարդկանց ուսուցանելու, առանց իմանալու թէ ինչ պէտք է ուսուցանել։

Այժմ, յիշելով այդ ժամանակամիջոցի իմ և այդ մարդկանց ժամանակակից տրամադրութեան մասին (այդպիսիների թիւը, ասենք, այժմ էլ հազարներ են), ինձ համար և՛ ցաւալի է, և՛ սարսափելի, և՛ ծիծաղելի. առաջ է գալիս ճիշտ նոյն զգացմունքը, որը կարող ես զգալ խելագարների տան մէջ։

Մենք բոլորս այն ժամանակ համոզուած էինք, որ մեզ հարկաւոր է խօսել և խօսել, գրել, տպագրել որքան կարելի է շուտ, որքան կարելի է շատ, որ այդ բոլորը կարեւոր է մարդկութեան երջանկութեան համար։ Եւ մենք հազարներով՝ իրար ժխտելով, շարունակ հայհոյելով անվերջ տպագրում, գրում էինք, ուրիշներին ուսուցանելով։ Եւ չնկատելով այն, որ մենք ոչինչ չգիտենք, որ կեանքի ամենահասարակ հարցին—թէ ինչն է լաւ և ինչը վատ—չգիտենք ինչ պատասխան տանք, մենք ամենքս, իրար չլսելով, մի անգամից խօսում էինք, երբեմն ներելով իրար ասածը և իրար գովաբանելով այն դիտաւորութեամբ, որ ինձ էլ ներեն ու գովաբանեն, երբեմն էլ գրգռուելով իրար դէմ ճիշտ այնպէս, ինչպէս խելագարների տանը։

Հազարաւոր բանուորներ օր ու գիշեր ուժասպառ լինելով աշխատում էին, շարում, տպագրում միլիօնաւոր բառեր և պօստն էլ տարածում էր նրանց՝ ամբողջ Ռուսաստանի մէջ, իսկ մենք աւելի ևս ուսուցանում էինք և ամենևին չէինք կարողանում հասցնել ամեն ինչ ուսուցանելու, և շարունակ բարկանում էինք, որ մեզ քիչ են լսում։

Զափազանց տարօրինակ էր, բայց այժմ ամեն ինչ հաս-

կանալի։ Մեր սրտագին անկեղծ դատողութիւնը այն էր, որ մենք ուզում էինք ըստ ամենայնի առատ դրամ և գովասանքներ ստանալ։ Այդ նպատակին հասնելու համար մենք ուրիշ ոչինչ չգիտէինք անել, բացի լրագիրներ ու գրքեր գրելուց։ Եւ հէնց այդ էինք անում մենք։ Բայց որպէս զի այդ անօգուտ բանը անելով հանդերձ մենք միևնոյն ժամանակ ունենանք այն համոզումը, թէ մենք չափազանց նշանաւոր մարդիկ ենք, մեզ տակաւին անհրաժեշտ էր ունենալ և մի այլ դատողութիւն, որը կարողանար նաև արդարացնել մեր գործունէութիւնը։ Եւ ահա մեր մէջ հնարուած էր հետևեալը. ամենայն ինչ, որ գոյութիւն ունի, բանական է։ Իսկ այն, ինչ որ գոյութիւն ունի, զարգանում է։ Զարգանում է սակայն՝ լուսաւորութեան միջոցով։ Լուսաւորութիւնն էլ չափվում է գրքերի, լրագրի տարածումով։ Իսկ մեզ դրամ են վճարում և յարգում նրա համար, որ մենք լրագիրներ և գրքեր ենք գրում, ուստի և մենք՝ ամենաօգտակար և լաւ մարդիկ ենք։ Այդ դատողութիւնը գուցէ շատ լաւ լինէր, եթէ մենք իրար հետ համերաշխ լինէինք, բայց որովհետև մէկի արտայայտած իւրաքանչիւր միտք միւսի արտայայտածի տրամագծօրէն հակառակն էր լինում, ուստի և այդ հանգամանքը պէտք է մեզ ստիպէր զգաստանալու։ Սակայն մենք այդ չէինք նկատում. մեզ դրամ էին վճարում, և մեր խմբի մարդիկ մեզ գովաբանում, ուստի և մենք, մեզանից իւրաքանչիւրը իրան արդար էր համարում։

Այժմ ինձ համար պարզ է, որ այստեղ խելագարների տան համեմատութեամբ ոչ մի տարբերութիւն չկար. այն ժամանակ սակայն ես աղօտ կերպով էի կասկածում այդ մասին, ըստ որում և, ինչպէս և բոլոր խելագարները, ինձանից զատ ամենքին համարում էի խելագարներ։

---

## III

Այդպէս ապրեցի ես վեց տարի ևս, անձատուր լինելով այդ անմտութեան, մինչև ամուսնանալս։ Այդ ժամանակամիջոցում ես գնացի արտասահման։ Կեանքը Եւրոպայում և իմ մերձեցումը եւրոպական առաջադէմ և գիտնական մարդկանց հետ՝ առաւել ևս ամրապնդեցին իմ այն հաւատը կատարելագործման նկատմամբ առհասարակ, որով ես ապրում էի, որովհետև հէնց նոյն բանն էի գտել նաև նրանց մէջ։ Այդ հաւատը իմ մէջ ըն-

դունեց այն սովորական ձևը, որը յատուկ է մեր ժամանակի
կրթուած մարդկանց մեծամասնութեանը։ Այդ դաւանանքը ար-
տայայտվում էր «պրօգրէսս» բառով։ Այն ժամանակ ինձ թւում
էր, թէ այդ բառով ինչ-որ մի բան արտայայտվում է։ Ես տա-
կաւին չէի ըմբռնում այն, որ, ինչպէս իւրաքանչիւր կենդանի
մարդ, տանջուելով այն հարցերով, թէ ինչպէս լաւ է ինձ ապ-
րել, ես պատասխանելով՝ ապրել համաձայն պրօգրէսսի,—պա-
տասխանում եմ ճիշտ նոյնը, ինչ կը պատասխանէր նաւակում
նստած և ալիքներով ու քամով տարուող մարդը՝ նրա համար
այս գլխաւոր ու միակ հարցին. «ո՞ր կողմը ուղղուել»,—եթէ
նա, չպատասխանելով բուն հարցին, ասէր. «մեզ սա ուր-որ
տանում է»։

Այն ժամանակ ես այդ չէի նկատում։ Շատ սակաւ դէպ-
քերում միայն՝ ո՛չ բանականութիւնս, այլ զգացմունքս վրդով-
վում էր մեր ժամանակի այդ ընդհանուր նախապաշարման դէմ,
որով մարդիկ իրանցից թագցնում էին կեանքի նկատմամբ ու-
նեցած իրանց անհասկացողութիւնը։ Այսպէս, երբ ես Պարի-
զումն էի, մահուան պատժի դէպքը մերկացրեց իմ առջև պրօգ-
րէսսի նախապաշարմանս խախուտ լինելը։ Երբ ես տեսայ, թէ
ինչպէս գլուխը բաժանուեց մարմնից և թէ մէկը ու թէ միւսը
հատ-հատ թրխկացին արկղում, ես հասկացայ,—ո՛չ խելքովս,
այլ ամբողջ էութեամբս,—որ գոյութեան և պրօգրէսսի խելամը-
տութեան և ո՛չ մի թէօրիա չէ կարող արդարացնել այդ վար-
մունքը և որ եթէ նոյն իսկ աշխարհի բոլոր մարդիկ որևէ
թէօրիաներով տիեզերքի ստեղծագործութեան առաջին օրից
սկսած ընդունէին, որ դա՝ կարևոր է,—ես գիտեմ, որ դա՛
կարևոր չէ, որ դա վատ բան է, ուստի և դրա դատաւորը
— ինչն է լաւ և կարևոր — նա չէ, ինչ որ ասում և անում
են մարդիկ, և ոչ էլ պրօգրէսսը, այլ ես եմ՝ իմ սրտով։
Կեանքի համար պրօգրէսսի նախապաշարման գիտակցու-
թեան անբաւարար լինելու մի այլ դէպքը՝ իմ եղբօր մահն էր։
Մի խելացի, բարի, լուրջ մարդ՝ նա հիւանդացաւ երիտասարդ
հասակում, տառապեց աւելի, քան մի տարի, և մեռաւ տան-
ջանքների մէջ, առանց հասկանալու թէ ինչու ապրեց, և ա-
ռաւել պակաս հասկանալով՝ թէ ինչու է ինքը մեռնում։ Ոչ մի
թէօրիա ոչինչ չէր կարողանում պատասխանել այս հարցերին
ո՛չ ինձ և ոչ նրան՝ նրա դանդաղ ու տանջալից մահացման մի-
ջոցին։ Բայց դրանք կասկածների միմիայն սակաւաթիւ դէպ-
քերն էին. էապէս սակայն ես շարունակում էի ապրել՝ ընդու-
նելով միայն դաւանանքս դէպի պրօգրէսսը։ «Ամեն ինչ զարգա-

նում է, ես էլ եմ զարգանում. բայց թէ ինչու եմ ես զարգանում այդ ամենի հետ, դա կերևայ ապագայում»։ Այն ժամանակ ես պէտք է հէնց այդպէս էլ ձևակերպէի իմ դաւանանքը։

Վերադառնալով արտասահմանից, ես բնակութիւն հաստատեցի գիւղում և ընկայ գիւղացիական դպրոցների պարապմունքների մէջ։ Այդ պարապմունքը իմ սրտին առանձնապէս մօտ էր, որովհետև նրա մէջ չկար ինձ համար ակնյայտնի դարձած այն կեղծիքը, որը արդէն իմ աչքն էր ծակում գրական ուսուցչութեան գործունէութեան մէջ։ Ես այստեղ ևս գործում էի յանուն պրօգրէսսի, սակայն արդէն քննադատաբար վերաբերուելով հէնց դէպի ինքը պրօգրէսսը։ Ես ինքս ինձ ասում էի, որ պրօգրէսսը իր մի քանի երևոյթների մէջ կատարուել է անկանոն կերպով և որ անհրաժեշտ է դէպի նախնական մարդիկ, դէպի գիւղական մանուկները ազատ վերաբերուել, առաջարկելով նրանց ընտրել պրօգրէսսի այն ուղին, որը նրանք կը ցանկան։ Իսկապէս ասած՝ պտտւում էի շարունակ հէնց միևնոյն անլուծելի խնդրի շուրջը, որը կայանում էր սրանում. ուսուցանել, չիմանալով թէ ինչ ես ուսուցանում։ Գրական գործունէութեան բարձր շրջաններում ես ըմբռնեցի, որ չէ կարելի ուսուցանել, չիմանալով թէ ինչ ես ուսուցանում, որովհետև տեսնում էի, որ բոլորն էլ ուսուցանում են զանազան բաներ և իրար հետ ունեցած վէճերով միմիայն թագցնում միմեանցից իրանց սեփական չգիտութիւնը։ Այստեղ սակայն՝ գիւղական մանուկների հետ՝ ես կարծում էի, որ կարելի է այդ դժուարութիւնը զանց առնել, թոյլ տալով մանուկներին սովորել այն, ինչ իրանք են կամենում։ Այժմ ինձ համար ծիծաղելի է յիշել այն, թէ ինչպէս ես այս ու այն կողմն էի ընկնում, որպէս զի կատարած լինեմ իմ ցանկութիւնը՝ ուսուցանելու, թէև հոգուս խորքում շատ լաւ գիտակցում էի, որ ես ոչինչ չեմ կարող ուսուցանել, որը լինի կարևոր, որովհետև ինքս էլ լաւ չգիտեմ, թէ ինչն է կարևոր։ Դպրոցական միամեայ պարապմունքներից յետոյ ես երկրորդ անգամ գնացի արտասահման, որ այնտեղ իմանամ, թէ ինչ պէտք է անել, որ ոչինչ չիմանալով հանդերձ՝ կարելի լինի ուրիշներին սովորեցնելու գիտութիւն ձեռք բերել։

Եւ ինձ թւում էր, թէ այդ բանը ես արտասահմանում սովորեցի և սպառազինուած այդ իմաստութեամբ, գիւղացիների ազատագրման տարին վերադարձայ Ռուսաստան ու, վերցնելով միջնորդի պաշտօնը, սկսեցի ուսուցանել և՛ անկիրթ ժողովրդին՝ դպրոցներում, և՛ կրթուածներին՝ ամսագրքերում,

որը ես սկսել էի հրատարակել։ Գործը, ըստ երևոյթին, գնում էր լաւ, սակայն զգում էի, որ ես մտաւորապէս ոչ-բոլորովին առողջ եմ և դա երկար շարունակուել չէ կարող։ Այդ միջոցին ես, հաւանական է, հասնէի այն յուսահատութեան, որին հասայ տասն-հինգ տարի յետոյ, եթէ իմ կեանքը չունենար մի այլ կողմ ևս՝ տակաւին անծանօթ ինձ համար և փրկութիւն խոստացող. դա ընտանեկան կեանքն էր։

Մի տարուայ ընթացքում ես պարապում էի միջնորդութեամբ, դպրոցներով, ամսագրով, և այնպէս տանջուեցի, մանաւանդ մոլորութիւնից, այնպէս ծանր դարձաւ ինձ համար միջնորդութեան առիթով մղած իմ կռիւը, այնքան աղօտ երևաց նաև իմ դպրոցական գործունէութիւնը, այնպէս զզուելի դարձաւ ինձ համար՝ ամսագրում իմ այս ու այն կողմը նետուելս, որը կայանում էր հէնց նոյն բանի մէջ—բոլորին ուսուցանելու ցանկութիւնը և ծածկելու այն, որ ես չգիտեմ ինչ ուսուցանեմ, որ ես հիւանդացել եմ աւելի հոգեպէս, քան ֆիզիքապէս —որ թողեցի ամեն ինչ և գնացի անապատ՝ բաշկիրների մօտ օդ շնչելու, ղըմըզ խմելու և կենդանական կեանք վարելու համար։

Վերադառնալով այնտեղից՝ ես ամուսնացայ։ Ընտանեկան երջանիկ կեանքի պայմանները միանգամայն հեռացրին ինձ կեանքի ամեն մի ընդհանուր իմաստի որոնումից։ Այդ միջոցին իմ ամբողջ կեանքը կենտրոնացած էր ընտանիքիս՝ կնոջս և երեխաներիս մէջ, ըստ որում և՝ ապրելու միջոցների աւելացման մէջ։ Ձգտումն առ կատարելագործումը, որը առաջ փոխուած էր ձգտումով դէպի կատարելագործումն ընդհանրապէս, դէպի պրօգրէսը, այժմ արդէն ուղղակի փոխուեց մի այլ ձգտման. որքան կարելի է լաւ լինէր ինձ իմ ընտանիքի հետ միասին։

Այդպէս անցաւ էլի տասն-հինգ տարի։

Չնայելով որ այդ տասն-հինգ տարիների ընթացքում գրող լինելը ես համարում էի դատարկ բան, բայց այնուամենայնիւ շարունակում էի գրել։ Ես արդէն ճաշակել էի գրող լինելու գայթակղութիւնը, իմ մի չնչին աշխատասիրութեան համար դրամական խոշոր վարձատրութեան և ծափահարութեան գայթակղութիւնը, և անձնատուր էի լինում նրան իբրև մի միջոցի՝ իմ նիւթական կացութեան բարւոքման և հոգուս խորքում իմ ու ընդհանուր կեանքի իմաստի բոլոր հարցերի խլացման համար։

Ես գրում էի ուսուցանելով այն, ինչ որ ինձ համար միակ

*ճշմարտութիւնն էր. այն է՝ մարդուն անհրաժեշտ է ապրել այնպէս, որ իրան՝ ընտանիքի հետ միասին՝ ըստ ամենայնի լաւ լինի։*

*Այդպէս էի ապրում ես. սակայն հինգ տարի առաջ սկսեց իմ մէջ տեղի ունենալ մի շատ տարօրինակ բան. լինում էին րոպէներ, երբ ինձ վրայ սկզբում տիրում էին մի տեսակ շըւարման րոպէներ, կեանքի դադարումներ. կարծես չէի իմանում, թէ ինչպէս պէտք է ապրել, ինչ անել, և ես շփոթվում էի ու ընկնում լքման մէջ։ Բայց դա անցնում էր, և ես շարունակում էի ապրել առաջուայ պէս։ Այնուհետև շուարման այդ րոպէները սկսեցին աւելի յաճախակի կրկնուել և միշտ միևնոյն ձևով։ Կեանքի այդ դադարումները միշտ արտայայտվում էին միատեսակ հարցերով.* ինչու համար. իսկ այնուհետև։

*Սկզբում ինձ թւում էր, թէ դրանք աննպատակ, անտեղի հարցեր են։ Ինձ թւում էր, որ այդ ամենը արդէն յայտնի է և որ՝ եթէ ես երբևիցէ կամենամ զբաղուել դրանց լուծմամբ, դա ինձանից առանձին ճիգ չի էլ պահանջի, որ այժմ միայն ժամանակ չունեմ զբաղուելու, և երբ մտադրուեմ, այն ժամանակ պատասխաններն էլ կը գտնեմ։ Սակայն աւելի յաճախ և յաճախ սկսեցին կրկնուել այդ հարցերը, աւելի ստիպողական կերպով պահանջուեցին պատասխանները և, որպէս կէտեր ընկնելով միևնոյն տեղի վրայ, խտացան անպատասխան այդ հարցերը և կազմեցին մի սև բիծ։*

*Պատահեց այն, ինչ պատահում է ներքին մահաբեր ցաւով բռնուած իւրաքանչիւր հիւանդացողի հետ։ Սկզբում հանդէս են գալիս թուլութեան աննկատելի նշաններ, որոնց վրայ հիւանդը ուշադրութիւն չէ դարձնում. ապա այդ նշանները կրկնվում են աւելի յաճախակի և՝ ըստ ժամանակի՝ ձուլվում մի անբաժան տառապանքի։ Տառապանքը աճում է, և հիւանդը հնար չէ ունենում սթափուելու, երբ արդէն գիտակցում է, որ այն՝ ինչ որ նա ընդունել էր որպէս թուլութիւն՝ նրա համար ամենանշանաւորն է եղել աշխարհումս, որ դա մահն է եղել։*

*Նոյնը պատահեց ինձ հետ։ Ես հասկացայ, որ դա պատահական թուլութիւն չէ, այլ մի ինչ-որ չափազանց նշանաւոր բան, և եթէ միևնոյն հարցերը կրկնվում են, ապա անհրաժեշտ է նրանց պատասխանը տալ։ Հարցերը սակայն թւում էին չափազանց անմիտ, հասարակ, մանկական։ Բայց հէնց որ ես ձեռք մեկնեցի դէպի նրանց և փորձեցի լուծել, անմիջապէս համոզուեցի, որ՝ առաջին՝ այդ հարցերը մանկական չեն և ոչ էլ անմիտ, այլ կեանքի մէջ ամենախոշոր և խորունկ հարցերն են, և՝*

երկրորդ՝ ես չեմ ու չեմ կարող լուծել նրանց, որքան էլ խորհեմ, մտածեմ։ Նախ քան զբաղուելս սամարական (նահանգ՝ Ռուսաստանում. թարգ.) կալուածքովս, որդուս դաստիարակութեամբ, գիրք գրելով՝ կարևոր է ինձ գիտենալ, թէ ինչու համար պէտք է անեմ այդ բոլորը։ Քանի որ ես չգիտեմ, թէ ինչու համար, ես չեմ կարող ոչինչ անել, ես չեմ կարող ապրել։ Տընտեսութեան վերաբերեալ մտքերիս մէջ, որոնք այն ժամանակ շատ էին ինձ զբաղեցնում, յանկարծ գլխումս ծագում էր այս միտքը. «Դէ, լաւ, դու Սամարայի նահանգում կունենաս 6,000 դեսեատին հող, 300 գլուխ ձի. իսկ յետոյ...»։ Եւ ես միանգամայն շուարում էի, չիմանալով թէ ինչ մտածեմ այնուհետև։ Կամ՝ մտածելով երեխաներիս դաստիարակութեան մասին, ես ասում էի ինքս ինձ. «Ինչու համար»։ Կամ՝ դատելիս, թէ ինչպէս ժողովուրդը կարող է հասնել բարեկեցութեան, ես յանկարծ ասում էի ինքս ինձ. «Իմ ինչ գործն է»։ Կամ՝ մտածելով այն փառքի մասին, որը ձեռք կը բերեն ինձ համար իմ հեղինակութիւնները, ես ասում էի. «Դէ, լաւ, դու կը լինես աւելի անուանի, քան Գօգօլը, Պուշկինը, Շէկսպիրը, Մօլիէրը, քան աշխարհի բոլոր գրողները. բայց յետոյ...»։ Եւ ես ոչինչ և ոչինչ չէի կարողանում պատասխանել։ Հարցերը չեն սպասում. անհրաժեշտ է իսկոյն պատասխանել. եթէ չես պատասխանի՝ ապրել անհնարին է։ Իսկ պատասխան չկայ։

Ես զգացի, որ այն, որի վրայ ես կանգնած էի, խորտակուել է, որ կանգնելու տեղ այլ ևս չունեմ. որ այն, որով ես ապրում էի, այլ ևս չկայ, ապրելու ոչինչ չունեմ։

---

## IV

Իմ կեանքը կանգ առաւ։ Ես չէի կարող շնչել, ուտել, խմել ու քնել, և չէի կարող չշնչել, չուտել, չխմել և չքնել. բայց կեանք չկար, որովհետև չկային այնպիսի ցանկութիւններ, որոնց բաւարարութիւն տալը ես համարէի խելամիտ։ Եթէ ցանկանում էլ էի որևէ բան, նախապէս գիտէի, որ իմ ցանկութեանս թէկուզ բաւարարութիւն տայի թէ չտայի, միևնոյն է, դրանից ոչինչ չէր դուրս գալու։ Եթէ ինձ մօտ գար մի կախարդուհի և առաջարկէր ի կատար ածել իմ ցանկութիւնը, ես չէի իմանայ, թէ ինչ պատասխանեմ։ Եթէ արբած րոպէներիս ես ունեմ ոչ թէ ցանկութիւններ, այլ նախկին ցանկութիւնների սովորու-

թիւններ, ապա զգաստ բոպէներիս ես գիտեմ, որ դա պատրանք է, որ ցանկալու ոչինչ չկայ։ Նոյն իսկ ես անկարող էի ցանկալ ճշմարտութիւնը իմանալու, որովհետև գուշակում էի, թէ ինչում պիտի կայանայ այն։ Ճշմարտութիւնը այն էր, որ կեանքը անմտութիւն է։ Ես կարծես ապրել եմ ու ապրել, գնացել եմ ու գնացել և ապա եկել հասել անդունդի. պարզորէն տեսնում էի, որ առջևս ոչինչ չկայ, բացի կորստից։ Եւ կանգ առնել չէ կարելի և յետ գնալ. և աչքերը փակել չէ կարելի՝ չտեսնելու համար, որ առաջը ոչինչ չկայ, բացի տառապանքներից ու իսկական մահից, կատարեալ ոչնչացումից։

Ինձ հետ տեղի ունեցաւ այն, որ ես՝ առողջ ու բաղդաւոր մարդս՝ զգացի, որ այլ ևս ապրել չեմ կարող, մի ինչ-որ անյաղթելի զօրութիւն քարշում է ինձ դէպի այն բանը, որով մի կերպ ես պէտք է ազատուէի կեանքից։ Չէ կարելի ասել, որ ես կամենում էի ինձ սպանել։

Այն զօրութիւնը, որ ինձ կեանքից հեռու էր տանում, ցանկութիւնից առաւել զօրեղ էր, լիարուռն, առաւել ընդհանուր։ Դա մի զօրութիւն էր, նման նախկին ձգտմանս առ կեանքը, միայն հակառակ յարաբերականութեամբ։ Ես իմ ամբողջ ուժով ձգտում էի անջատուել կեանքից։ Անձնասպանութեան միտքը ծագեց իմ մէջ նոյն բնական ճանապարհով, ինչպէս առաջ ծագում էին մտքերը՝ կեանքի բարելաւութեան վերաբերմամբ։ Այդ միտքը այնքան գայթակղեցուցիչ էր, որ ես ստիպուած էի հէնց իմ դէմ խորամանկութիւններ գործադրել, որպէս զի այն ի կատար չածեմ չափազանց արագութեամբ։ Ես չէի ուզում շտապել՝ միմիայն այն պատճառով, որ կամենում էի գործադրել ամէն ջանք՝ ցանցից ազատուելու համար. եթէ չազատուեմ՝ առաջինը հօ միշտ կաջողեցնեմ։ Եւ ահա այդ միջոցին ես, բախտաւոր անձնաւորութիւնս, ինձանից թաքցնում էի պարանը, որպէս զի չկախուեմ սենեակումս գտնուող երկու պահարանների արանքներում, որտեղ ես ամէն գիշեր մենակ էի լինում շորերս հանելիս. դադարեցի հրացանով որսի գնալուց, որպէս զի չգայթակղուեմ կեանքից անջատուելու այդ չափազանց հեշտ միջոցով. ես ինքս չգիտէի, թէ ինչ էի կամենում. կեանքից ես վախենում էի, ձգտում էի անջատուելու նրանից և՝ միևնոյն ժամանակ՝ ուրիշ բան ակնկալում նրանից։

Եւ դա տեղի ունեցաւ իմ մէջ այն ժամանակ, երբ ամէն կողմից շրջապատուած էի այն բանով, որը համարվում է իսկական երջանկութիւն. դա այն ժամանակ էր, երբ ես տակաւին յիսուն տարեկան չկայի։ Ես ունէի բարի, սիրող և սիրելի կին, լաւ

զաւակներ և մեծ կալուածք, որը առանց իմ աշխատանքի աճում ու մեծանում էր։ Ես յարգուած էի իմ մերձաւորների և ծանօթների կողմից, առաւել քան երբևիցէ գովաբանվում ուրիշներից և կարող էի համոզուած լինել, որ իմ անունը հռչակուած է, առանց որոշ անձնախաբէութեան։ Միևնոյն ժամանակ ես ոչ թէ խելագարուած էի կամ հոգեպէս հիւանդ, այլ ընդհակառակը՝ ես տիրապետում էի թէ հոգեկան և թէ ֆիզիքական ոյժով, որպիսի երևոյթի ես սակաւ էի հանդիպում իմ հասակակիցների շրջանում. ֆիզիքապէս ես կարող էի աշխատել հնձաններում առանց երբէք յետ մնալու գիւղացիներից. մտաւորապէս ես կարող էի անընդհատ կերպով գործել 8—10 ժամ, ոչ մի յոգնածութիւն չզգալով այդօրինակ լարուածութիւնից։ Եւ այդպիսի կացութեան մէջ ես հասայ այն կէտին, որ ապրել այլ ևս չեմ կարողանում և, վախենալով մահից, ստիպուած էի անձիս դէմ խորամանկութիւններ գործադրել՝ ինքս ինձ կեանքից չզրկելու համար։

Ինձ համար հոգեկան այդ կացութիւնը արտայայտվում էր այս ձևով. իմ կեանքը ինչ-որ մէկի՝ (մի անյայտնի. թարգմ.) իմ գլխին խաղացած մի ինչ-որ անմիտ և չար կատակ է։ Չը նայելով, որ ես չէի ընդունում այդ «ինչ-որ մէկին», որը ինձ ստեղծել է, սակայն պատկերացման այն ձևը—թէ ինչ-որ մէկը ինձ ծաղրել է չար և անմիտ կերպով աշխարհ բերելով ինձ—ինձ համար պատկերացման ամենաբնական ձևն էր։

Ակամայից թւում էր, որ այնտեղ՝ ուր-որ՝ կայ մէկը, որը այժմ հրճւում է ինձ վրայ դիտելով՝ թէ ինչպէս ամբողջ 30—40 տարի ապրեցի, ապրեցի՝ սովորելով, զարգանալով, աճելով մարմնով ու հոգով և ինչպէս այժմ էլ մտաւորապէս ամբողջովին ամրացած, հասնելով կեանքի այն գագաթնակէտին, որտեղից նա ամբողջապէս բացվում է իմ առջև,—ինչպէս ես իբրև յիմարագոյն յիմար կանգնած եմ այդ գագաթնակէտի վրայ, պարզօրէն հասկանալով որ կեանքում ոչինչ չկայ, չէ եղել և չէ լինելու։ Իսկ նրան դեռ ծիծաղելի է այդ…

Սակայն կա՞ր այդ մէկը, որը ինձ վրայ ծիծաղում է, թէ՞ ոչ. դա ինձ չէր սփոփում։ Ես չէի կարող որևէ խելացի իմաստ հաղորդել վարմունքներիցս և ո՛չ մէկին և ո՛չ էլ իմ ամբողջ կեանքին։ Ինձ միայն զարմացնում էր այն հանգամանքը, թէ ինչպէս է, որ ես դեռ սկզբում չեմ կարողացել հասկանալ այն։ Այդ բոլորը շատ վաղուց յայտնի են ամենքին։ Եթէ ոչ այսօր, վաղը կը գան հիւանդութիւնները, մահը (և արդէն եկել էին) սիրելի մարդկանց վրայ, և ոչինչ չի մնայ բացի գար-

շահոտութիւնից և որդերից։ Իմ գործերը, ինչպիսիք էլ որ լինեն նրանք, բոլորն էլ վաղ թէ ուշ կը մոռացուեն. ես էլ հո չեմ մնալու։ Դէհ, ուրեմն ինչու համար եմ հոգս անում։ Ի՛նչպէս կարող է մարդ չտեսնել այս ամենը և ապրել. ահա որն է զարմանալին։ Կարելի է ապրել՝ քանի կեանքից արբած ես. բայց հէնց որ զգաստանաս՝ չես կարող չտեսնել, որ այս ամենը միմիայն պատրանք է, անմիտ պատրանք։ Բանն էլ հէնց նրանումն է, որ ծիծաղելի ու սրամիտ ոչինչ չկայ, այլ ուղղակի՝ դաժան ու անմիտ բան։

Վաղուց արդէն պատմուած է արևելեան առակը մի ճանապարհորդի մասին, որը դաշտում հանդիպում է մի կատաղի գազանի։ Փախչելով գազանից, ճանապարհորդը ցատկում է անջրդի ջրհորի մէջ, որի յատակում նա տեսնում է մի վիշապ, երախը բացած՝ պատրաստ նրան կլանելու։ Եւ դժբախտը, համարձակութիւն չունենալով ջրհորից դուրս գալու՝ կատաղած գազանից չոչնչանալու համար, նոյն կերպ չհամարձակուելով իջնել ջրհորի յատակը՝ վիշապից չկլանուելու համար, փարվում է ջրհորի ճեղքուածքում բուսած վայրենի թփի ճիւղերին և այդպէս մնում կախ ընկած։ Նրա ձեռքերը թուլանում են, նա զգում է, որ շուտով պէտք է կորստի մատնուի երկու կողմերում նրան սպասողներից էլ. բայց նա դեռ մնում է այդպէս փարուած և տեսնում է, որ երկու մկներ՝ մէկը սև, միւսը սպիտակ՝ հաւասար չափով պտոյտ են գործում թփի բարակ բնի շուրջը և կրծոտում այն, որից ինքը կախ ընկած մնում է։ Ահա մի վայրկեանից թուփն ինքն իրան կը քանդուի ու կը պոկուի, և նա կը նետուի վիշապի երախը։ Ճանապարհորդը այդ տեսնում է և իմանում, որ իր կորուստը անխուսափելի է, բայց քանի այդպէս կախ ընկած է մնում՝ նա որոնում է իր շուրջը և գտնում թփի տերևների վրայ մեղրի կաթիլներ ու լեզուն հասցնելով սկսում լիզել։ Ճիշտ նոյն ձևով ես եմ փարուած կեանքի ճիւղերին, գիտենալով որ մահուան վիշապը անխուսափելի կերպով սպասում է՝ պատրաստ ինձ յօշոտելու, և չեմ կարողանում ըմբռնել, թէ ինչու համար եմ ընկել այս տառապանքների մէջ։ Եւ ես փորձում եմ ծծել այն մեղրը, որը անցեալում ինձ սփոփում էր, սակայն այլ ևս նա ինձ չէ ուրախացնում. իսկ այդ սև ու սպիտակ մկները օր ու գիշեր կրծոտում են այն ճիւղերը, որոնցից ես փարուած մնում եմ։ Ես պարզապէս տեսնում եմ վիշապին, ուստի և մեղրն ինձ համար քաղցր չէ։ Ես տեսնում եմ մի բան՝ անխուսափելի վիշապին և մկներին՝ և չեմ կարող հայեացքս նրանցից հեռացնել։ Սա ա-

ռակ չէ, այլ ճշմարիտ, անվիճելի և իւրաքանչիւրին հասկանալի արդարութիւն։

Վիշապի սարսափը խլացնող՝ իմ ուրախ կեանքի նախկին պատրանքը ինձ այլ ևս չէ խաբում։ Որքան էլ ինձ ասեն թէ՝ «դու չես կարող ըմբռնել կեանքի իմաստը, մի՛ մտածիր, ապրի՛ր», ես չեմ կարող անել այդ, որովհետև անցեալում երկար ժամանակ արել եմ այդպէս։ Այժմ ես չեմ կարող չտեսնել օրն ու գիշերը, որոնք վազում են ու տանում ինձ դէպի մահ։ Ես միմիայն այդ եմ տեսնում, որովհետև այդ է միակ ճշմարտութիւնը։ Մնացածը սուտ է։

Մեղրի այն երկու կաթիլները, որոնք ամենից աւելի հեռացրել են ինձ դաժան ճշմարտութիւնից—սէրը դէպի ընտանիքս ու գրականագիտութիւնը, որը ես համարում էի գեղարուեստ—ինձ համար այլ ևս քաղցր չեն։

«Ընտանիքս...,—ասում էի ինքս ինձ.—բայց ընտանիքս, այսինքն կինս ու զաւակներս էլ մարդ են։ Նրանք ևս միևնոյն պայմանների մէջ են գտնվում, որոնց մէջ եմ ես. նրանք կամ պէտք է ապրեն կեղծիքի մէջ, կամ տեսնեն սարսափելի ճշմարտութիւնը։ Ինչո՞ւ համար սակայն ապրեն։ Ինչո՞ւ սիրեմ նրանց, պահպանեմ, մեծացնեմ և հսկեմ նրանց վրայ։ Միևնոյն յուսահատութեան համար, որի մէջ ես եմ գտնվում, թէ՞ բթամտութեան։ Սիրելով նրանց, ես չեմ կարող նրանցից թաքցնել ճշմարտութիւնը. ճանաչողութեան իւրաքանչիւր քայլը տանում է դէպի այդ ճշմարտութիւնը։ Իսկ ճշմարտութիւնը մահն է»։

«Գեղարուեստը, բանաստեղծութի՜ւնը»... Մարդկային գովասանքների աջողութեան ազդեցութեան տակ ես երկար ժամանակ ինձ համոզում էի, թէ դա մի գործ է, որ կարելի է անել չնայած մահուան գալստեանը, որը ամեն ինչ պիտի ոչնչացնէ՝ թէ իմ գործերը և թէ նրանց յիշատակը. բայց ես շուտով տեսայ, որ դա ևս պատրանք է։ Ինձ համար պարզ էր, որ արուեստը կեանքի զարդարանքն է, կեանքի հրապուրիչը։ Սակայն կեանքը ինձ համար կորցրել է իր հրապուրանքը. ուրեմն ինչպէս կարող եմ ես ուրիշներին հրապուրել։

Քանի ես դեռ չէի ապրում իմ կեանքով, այլ ուրիշի կեանքն էր տանում ինձ իր ալիքների վրայ, քանի ես հաւատում էի, որ կեանքը ունի իմաստ, թէև ես չգիտեմ արտայայտել այն, բանաստեղծութեան և արուեստների մէջ կեանքի բազմապիսի անդրադարձումները ինձ ցնծութիւն էին պատճառում։ Զարհուրելի էր նայել ինձ համար արուեստի այդ հայելիից. սակայն երբ զգացի ինքեան ապրելու անհրաժեշտութիւնը, այդ

հայելին դարձաւ ինձ համար կամ անպէտք, աւելորդ և ծիծաղելի, կամ տանջալից։ Անհնարին էր ինձ մխիթարուել նրանով, որ ես հայելիի մէջ տեսնում էի դրութեան անմիտ և յուսահատեցուցիչ լինելը։ Լաւ էր այդ բանին ուրախանալը, երբ ես հոգուս խորքում հաւատում էի, որ իմ կեանքը իմաստալից է։ Այն ժամանակ լոյսերի այդ խաղը—կեանքի մէջ ծիծաղելին, ողբերգականը, գթաշարժը, գեղեցիկը, սարսափելին—ինձ զըւարճացնում էր։ Սակայն երբ իմացայ, որ կեանքը անիմաստ է և սոսկալի, հայելիի մէջ խաղը ինձ այլ ևս չէր կարող զբաղեցնել։ Մեղրի ոչ մի քաղցրութիւնը ինձ համար անուշ լինել չէր կարող, քանի ես տեսնում էի վիշապին ու իմ յենակէտը կրծող մկներին։

Սակայն դա բաւական չէ։ Եթէ ես հասարակօրէն ըմբռնած լինէի, որ կեանքը իմաստ ունի, ես կարող էի այդ գիտենալ հանգիստ կերպով, կարող էի գիտենալ, որ դա իմ ճակատագիրն է։ Բայց ես դրանով չէի հանգստանում։ Եթէ ես նման լինէի անտառաբնակ այն մարդուն, որը հաւատացած է, թէ անտառը ոչ մի ելք չունի, ես դեռ կարող էի ապրել։ Բայց ես նման էի անտառում մոլորուած այն մարդուն, որին տիրել է մոլորման սարսափը և նա այս ու այն կողմը նետուելով կամենում է ճանապարհ դուրս գալ—գիտենալով որ իր իւրաքանչիւր քայլը առաւել ևս մոլորեցնում է նրան—և չէ կարող չնետուել այս ու այն կողմը։

Ահա որն էր սարսափելին։ Եւ որպէս զի ազատուեմ այդ սարսափից, ես ուզում էի ինձ սպանել։ Ես սարսափ էի զգում այն բանից, որը ինձ սպասում էր. գիտէի, որ այդ սարսափը ընդհանուր կացութիւնից աւելի սարսափելի է, սակայն համբերութեամբ սպասել վախճանին՝ ես անկարող էի։ Որքան էլ համոզեցուցիչ լինէր այն դատողութիւնը, թէ սրտի անօթը՝ միևնոյն է՝ պատառուելու է կամ որևէ բան պայթելու և ամեն ինչ վերջանալու, այնուամենայնիւ ես չէի կարող համբերութեամբ սպասել վախճանին։ Խաւարի սարսափը սոսկալի մեծութեան էր, և ես կամենում էի շուտով, շատ շուտով ազատուել նրանից՝ պարանով կամ փամփուշտով։

Արդ, հէնց այդ զգացումն էր գլխաւորապէս, որ ուժգնօրէն քարշում էր ինձ դէպի ինքնասպանութիւն։

---

## V

«Բայց գուցէ ես որևէ բան աննկատելի՞ եմ թողել, չե՞մ հասկացել,—մի քանի անգամ ասում էի ինքս ինձ։—Հօ չէ՞ կարող լինել, որ յուսահատութեան այս դրութիւնը մարդկանց համար յատուկ լինի»։ Եւ ես իմ այս հարցերի բացատրութիւնը որոնում էի բոլոր այն գիտութիւնների մէջ, որոնց ձեռք են բերել մարդիկ։ Ես տանջուելով ու երկար ժամանակ որոնում էի, և ոչ թէ պարապ հետաքրքրութիւնից ու թմրած դրութեամբ, այլ որոնում էի տառապելով, յամառօրէն, օր ու գիշերներով. որոնում էի այնպէս, ինչպէս կորստի մատնուածը՝ փրկութիւն. սակայն ոչինչ չգտայ։

Ես որոնում էի բոլոր գիտութիւնների մէջ, և սակայն ոչ միայն ոչինչ չգտայ, այլ և համոզուեցի, որ բոլոր նրանք, որոնք ինձ պէս որոնել են նրան գիտութեան մէջ, նոյնպէս ոչինչ չեն գտել։ Եւ ոչ միայն ոչինչ չեն գտել, այլ և պարզապէս ընդունել են, որ այն, որը հասցրել է ինձ յուսահատութեան—կեանքի անիմաստութիւնը—մարդու համար մատչելի միակ և ոչ-կասկածելի գիտութիւնն է։

Ես որոնում էի ամենուրեք, և, շնորհիւ ուսման մէջ իմ անցկացրած կեանքի, նոյն և գիտական աշխարհի հետ իմ ունեցած կապերի, ինձ մատչելի էին հէնց իրանք՝ գիտութեան բազմապիսի բոլոր ճիւղերի՝ գիտնականները, որոնք չէին մերժում պարզելու իմ առջև իրանց գիտութիւնները ոչ միայն գրքերում, այլ և զրոյցների մէջ, որով ես իմացայ այն ամենը, ինչ գիտութիւնը պատասխանում է կեանքի հարցին։

Երկար ժամանակ ես չէի կարողանում հաւատալ այն բանին, որ գիտութիւնը ոչինչ այլ պատասխան չէ տալիս կեանքի հարցերին, քան այն, ինչ որ արդէն պատասխանում է։ Երկար ժամանակ ինձ թւում էր—զննելով գիտութեան եղանակի նշանաւորութիւնն ու լրջութիւնը, որը հաստատում էր մարդկային կեանքի հարցերի հետ ոչինչ ընդհանուր չունեցող իր ձեւակերպումները—թէ ես ինչ-որ բան չեմ հասկանում։ Երկար ժամանակ ես ընկճվում էի գիտութեան առջև, և ինձ թւում էր, որ իմ հարցերի պատասխանների անհամապատասխանութիւնը ոչ թէ գիտութեան յանցանքի արդիւնքն է, այլ իմ տգիտութեան։ Բայց այս գործը ինձ համար մի կատակ, մի խաղալիք չէր, այլ իմ ամբողջ կեանքի գործը, և ես կամայ-ակամայ եկել էի այն համոզման, որ իմ հարցերը օրինական միակ հարցերն

են, որոնք ծառայում են իբրև հիմք իւրաքանչիւր գիտութեան, և որ ոչ թէ ես եմ յանցաւոր իմ հարցերով, այլ գիտութիւնը թէ նա յաւակնութիւն ունի պատասխանելու այդ հարցերին։

Իմ հարցը այն հարցն էր, որը ինձ յիսուն տարեկան հասակումս հասցրել էր ինքնասպանութեան. դա մի՛ իւրաքանչիւր մարդու մէջ ննջող՝ սկսած անմիտ երեխայից մինչև ամենաիմաստուն ծերունին՝ հասարակ հարց էր, մի հարց, առանց որի ապրելը անհնարին է. այդպէս զգացի ես գործնականութեան մէջ։ Հարցը կայանում էր սրանում. «Ի՛նչ պիտի դուրս գայ այն բանից, որը ես այժմ անում եմ և պիտի անեմ վաղը. ինչ պիտի դուրս գայ իմ ամբողջ կեանքից»։

Այլ կերպ արտայայտած՝ հարցը պիտի տրուի այսպէս. «Ինչու՞ ապրեմ, ինչու՞ որևէ բան ցանկամ, ինչու՞ որևէ բան անեմ»։ Կարելի է հարցը արտայայտել և այս ձևով. «Կա՞յ արդեօք իմ կեանքի մէջ մի այնպիսի իմաստ, որը չոչնչանար ինձ սպասող անխուսափելի մահով»։

Հէնց այս միևնոյն հարցի՝ տարբեր ձևերով արտայայտուած՝ պատասխանը ես որոնում էի մարդկային գիտութեան մէջ։ Եւ ես գտայ, որ այդ հարցի վերաբերութեամբ մարդկային բոլոր գիտութիւնները կարծես բաժանուելիս լինեն երկու հակադիր կիսամթնոլորտների, որոնց հակառակ ծայրերի վրայ գտնվում են երկու բևեռներ. մէկը՝ բացասական է, միւսը՝ դրական. և սակայն ոչ մէկ և ոչ միւս բևեռի վրայ կեանքի հարցերի պատասխաններ չկան։

Գիտութիւնների մի շարքը կարծես չէ էլ ընդունում այդ հարցը, սակայն պարզ ու ճշգրիտ կերպով պատասխանում է իր առաջադրած անկախ հարցերին. դա փորձնական գիտութիւնների շարքն է, և նրանց ծայր-կէտի վրայ կանգնած է մաթեմատիկան. գիտութիւնների միւս շարքը ընդունում է հարցը, բայց չէ պատասխանում նրան. դա վերացական գիտութիւնների շարքն է, և նրանց ծայր-կէտի վրայ՝ բնազանցութիւնն է։

Իմ երիտասարդական վաղ անցեալից սկսած ինձ զբաղեցրել են վերացական գիտութիւնները, սակայն յետոյ մաթեմատիկական և բնական գիտութիւնները ինձ գրաւեցին, և մինչև որ պարզապէս չդրի առաջս իմ հարցը, մինչև որ դա ինքն իրան չհասունացաւ իմ մէջ, պահանջելով ստիպողական լուծումն, մինչ այդ ես բաւականանում էի իմ հարցի պատասխանների այն կեղծիքներով, որ տալիս է գիտութիւնը։

Երբեմն՝ փորձնական ասպարէզում՝ ես ինձ ասում էի.

«Ամէն ինչ զարգանում է, շերտաւորվում, քայլում դէպի բարդացումն ու կատարելագործումն, և կան օրէնքներ, որոնք ղեկավարում են այդ ընթացքը։ Դու ամբողջի մասն ես։ Ըմբռնելով, ըստ հնարաւորութեան, ամբողջութիւնը, ըմբռնելով և զարգացման օրէնքը, դու ըմբռնում ես նաև քո տեղը այդ ամբողջութեան մէջ, նոյն և՝ քեզ»։ Որչափ էլ ամօթ լինի ինձ համար խոստովանելը, բայց կար ժամանակ, երբ ես կարծես բաւականանում էի դրանով։ Դա հէնց այն ժամանակն էր, երբ ես ինքս բարդանում ու զարգանում էի։ Իմ մկանունքները աճում ու ամրանում էին, յիշողութիւնս ճոխանում, մտածողութեան ու ըմբռնողութեան ընդունակութիւնս մեծանում, ես աճում ու զարգանում էի, և, զգալով իմ մէջ այդ աճումը, ինձ համար բնական էր մտածելը, թէ հէնց դա է ամբողջ տիեզերքի օրէնքը, որի մէջ ես կը գտնեմ իմ կեանքի հարցերի լուծումը։ Սակայն եկաւ ժամանակը, երբ աճեցումը իմ մէջ կանգ առաւ. ես զգացի, որ այլ ես չեմ զարգանում, այլ ցամաքում եմ, մկանունքներս թուլանում, ատամներս ընկնում են. և ես տեսայ, որ այդ օրէնքը ինձ ոչ միայն ոչինչ չէ բացատրում, այլ և այդպիսի օրէնք երբէք գոյութիւն չէր էլ կարող ունենալ և որ ես ընդունել եմ իբրև օրէնք այն, ինչ որ գտել եմ իմ մէջ կեանքի որոշ շրջանում։ Ես աւելի խստօրէն վերաբերուեցի այդ օրէնքի ձևակերպութեանը. ուստի և ինձ համար պարզուեց, որ անվախճան զարգացման օրէնք չէ կարող լինել. պարզուեց, որ ասել թէ՝ անվախճան տարածութեան և ժամանակի մէջ ամէն ինչ զարգանում է, կատարելագործվում, բարդանում, շերտաւորվում, դա՝ նշանակում է ոչինչ չասել։ Դրանք բոլորը բառեր են առանց նշանակութեան, որովհետև անվախճանութեան մէջ չկայ ո՛չ մի բարդ, ո՛չ մի հասարակ բան, ո՛չ առջև և ո՛չ ետև, ո՛չ լաւագոյն և ո՛չ վատագոյն։

Գլխաւորը սակայն այն է, որ իմ հարցը անձնական է. ի՞նչ բան եմ ես իմ ցանկութիւններով.—մնում էր բոլորովին առանց պատասխանի։ Եւ ես հասկացայ, որ այդ գիտութիւնները չափազանց հետաքրքրական են, չափազանց գրաւիչ, սակայն այդ ճշգրիտ ու պարզ գիտութիւնները խոտոր յարաբերական են իրանց կցորդութեամբ կեանքի հարցերին. ո՛ր չափով որ պակաս է նրանց կցորդութիւնը կեանքի հարցերում, այն չափով նրանք ճշգրիտ են ու պարզ. ո՛ր չափով նրանք աւելի ձգնում են լուծումն տալ կեանքի հարցերին, այն չափով նրանք դառնում են աւելի անհասկանալի և ոչ-հրապուրիչ։ Եթէ դիմելու լինես այդ գիտութիւնների այն ճիւղին, որը ձգնում է

լուծումն տալ կեանքի այդ հարցերին—ֆիզիօլոգիային (ճիւղին), հոգեբանութեանը, բիօլոգիային, սոցիօլոգիային, այդ դէպքում կը հանդիպես մտքի ապշեցուցիչ աղքատութեան, մեծագոյն անորոշութեան, ոչնչով չարդարացուած յաւակնութեան՝ իրանց չվերաբերող հարցերի լուծման տեսակէտից և մի մտածողի անվերջ հակասութիւններին միւսների հետ և նոյն իսկ՝ ինքն իրան հետ։ Եթէ դիմելու լինես գիտութիւնների այն ճիւղին, որը չէ զբաղվում կեանքի հարցերի լուծմամբ, բայց պատասխանում է իր գիտական իրայատուկ հարցերին, այդ դէպքում կը մնաս հիացած՝ մարդկային խելքի զօրութեան վրայ, սակայն նախապէս պէտք է իմանաս, որ կեանքի հարցերին պատասխան չը կայ։ Այդ գիտութիւնները ուղղակի ժխտում են կեանքի հարցը։ Նրանք ասում են. «Այն հարցին, թէ դու ինչ բան ես և ինչու ես ապրում, մենք պատասխան չունենք և դրանով չենք զբաղվում. իսկ եթէ քեզ հարկաւոր է գիտենալ լոյսի օրէնքները, քիմիական միութիւնները, օրգանիզմների զարգացման օրէնքը, եթէ քեզ հարկաւոր է գիտենալ մարմինների օրէնքը, նրանց ձևն ու թուերի և մեծութիւնների յարաբերութիւնը, եթէ քեզ հարկաւոր է գիտենալ քո խելքի օրէնքները, այդ դէպքում մենք ունենք այդ ամենի պարզ, ճշգրիտ և անվիճելի պատասխանները»։

Առհասարակ փորձնական գիտութիւնների յարաբերութիւնը կեանքի հարցի վերաբերմամբ կարող է արտայայտուել այսպէս։ Հարց. ինչո՞ւ եմ ապրում։ Պատասխան. անվախճան մեծ տարածութեան մէջ, անվախճան երկար ժամանակում, անվախճան փոքր մասնիկները կերպարանափոխվում են անվախճան բարդութեան մէջ, և երբ դու կըմբռնես այդ կերպարանափոխութիւնների օրէնքները, այն ժամանակ կըմբռնես նաև, թէ ինչո՞ւ ես ապրում երկրի վրայ։

Երբեմն վերացականութեան ասպարիզում ես ինձ ասում էի. «Ամբողջ մարդկութիւնը ապրում է, զարգանում հոգեկան սկզբունքների, իդէալների հիման վրայ, որոնք նրան ղեկավարում են։ Այդ իդէալները արտայայտվում են կրօնների, գիտութիւնների, արուեստների, պետականութեան ձևերի մէջ։ Այդ իդէալները հետզհետէ դառնում են բարձր և բարձր, և մարդկութիւնը ընթանում է դէպի բարձրագոյն երջանկութիւնը։ Ես մարդկութեան մասն եմ, ուստի և իմ կոչումը կայանում է նրանում, որ ես նպաստեմ մարդկային իդէալների գիտակցմանը և իրականացմանը»։ Եւ ես իմ թուլամտութեան շրջանում դրանով բաւականանում էի. սակայն հէնց որ պարւ

կերպով կանգնեց իմ մէջ կեանքի հարցը, այդ ամբողջ թէօրիան մի ակնթարթում կործանուեց։ Չշեշտելով այն անազնիւ անճշտութեան վրայ, որով այդ շարքի գիտութիւնները արտաբերում են իբրև ընդհանուր եզրափակումներ՝ մարդութեան փոքր մասի ուսումնասիրութեամբ. չշեշտելով այդ հայեացքի զանազան կողմնակիցների փոխադարձ հակասութիւնների վրայ, թէ ինչումն են կայանում մարդկութեան իդէալները,—այդ հայեացքի տարօրինակութիւնը, եթէ չասեմ՝ անմտութիւնը, կայանում է նրանում, որ պատասխանելու համար իւրաքանչիւր մարդու առջև դրուած այն հարցին, թէ՝ «ի՞նչ եմ ես», կամ՝ «ինչու եմ ապրում», կամ՝ «ի՞նչ անեմ»,—մարդ պէտք է նախ լուծի մի հարց. ի՞նչ բան է իրան անծանօթ ամբողջ մարդկութիւնը, որից նրան յայտնի է նրա մի աննշան մասնիկը մի աննշան ժամանակաշրջանում։ Որպէս զի մարդ հասկանայ, թէ ինչ է ինքը, պէտք է ամենից առաջ հասկանայ, թէ ինչ է այդ ամբողջ խորհրդաւոր մարդկութիւնը՝ կազմուած այնպիսի մարդկանցից, որոնք՝ ինչպէս և ինքը՝ չեն հասկանում իրանք իրանց։

Պէտք է խոստովանեմ, որ կար ժամանակ, երբ ես դրան հաւատում էի։ Դա այն ժամանակաշրջանն էր, երբ ես ունէի իմ ցանկութիւնները արտայայտող՝ սիրած իդէալներ, ըստ որում ես աշխատում էի հնարել մի այնպիսի թէօրիա, որի հիմամբ կարողանայի նայել իմ ցանկութիւնների վրայ՝ որպէս մարդկութեան օրէնքի վրայ։ Բայց հէնց որ իմ հոգու մէջ բարձրացաւ կեանքի հարցը իր ամբողջ պարզութեամբ, այդ պատասխանը անմիջապէս յօդս ցնդեց։ Եւ ես հասկացայ, որ՝ ինչպէս որ փորձնական գիտութիւնների մէջ կան իսկական գիտութիւններ և կիսագիտութիւններ, որոնք փորձում են պատասխաններ տալու իրանց չվերաբերող հարցերին, այնպէս էլ այս ասպարիզում ես հասկացայ, որ կան ամենատարածուած գիտութիւնների ամբողջ շարքեր, որոնք նոյն կերպ ձգնում են պատասխանելու իրանց չվերաբերող հարցերին։ Այդ ասպարիզի կիսագիտութիւնները—իրաւաբանական գիտութիւնները, սօցիալ-պատմական—փորձում են լուծել մարդու հարցերը նրանով, որ դրանցից իւրաքանչիւրը իր տեսակէտից որպէս թէ լուծում է ամբողջ մարդկութեան կեանքի հարցը։

Սակայն՝ ինչպէս որ փորձնական գիտութիւնների ասպարիզում անկեղծօրէն հարց տուող մարդը, թէ ինչպէս պէտք է ապրել, չէ կարող բաւականանալ այս պատասխանով՝ «ուսումնասիրիր անվախճան տարածութեան մէջ անվախճան մանր

մասնիկների ժամանակով ու բարդութեամբ անվախճան փոփոխութիւնները և այն ժամանակ դու կը հասկանաս կեանքը», հէնց միևնոյն կերպ անկեղծ մարդը չէ կարող բաւականանալ այս պատասխանով. «ուսումնասիրիր ամբողջ մարդկութեան կեանքը, որի ո՛չ սկիզբը, ո՛չ էլ վախճանը մենք անկարող ենք իմանալու և որի փոքրիկ մասնիկն անգամ չգիտենք, և այն ժամանակ դու կը հասկանաս քո կեանքը»։ Հէնց միևնոյն կերպ՝ ինչպէս փորձնական կիսագիտութիւնների մէջ՝ այս կիսագիտութիւններն ևս այն չափով լցուած են մթութիւններով, անճշտութիւններով, անմտութիւններով ու հակասութիւններով, որ չափով որ նրանք շեղվում են խնդիրների բուն էութիւնից։ Փորձնական գիտութեան նպատակն է՝ նիւթական երևոյթների պատճառական հետևողականութիւնը։ Բաւական է փորձնական գիտութիւնը փորձ անէ մտցնելու իր մէջ վախճանական պատճառի խնդիրը, որպէս զի ստացուի անհեթեթութիւն։ Վերացական գիտութեան նպատակն է՝ կեանքի անպատճառական էութեան գիտակցութիւնը։ Բաւական է մտցնել նրա մէջ պատճառական երևոյթների հետախուզութիւնը, ինչպէս օրինակ՝ սոցիալական, պատմական երևոյթները, որ ստացուի միևնոյն անհեթեթութիւնը։

Փորձնական գիտութիւնը այն ժամանակ միայն տալիս է դրական գիտութիւն և արտայայտում մարդկային խելքի վեհութիւնը, երբ նա չէ մտցնում իր հետախուզութիւնների մէջ վախճանական պատճառը։ Եւ, ընդհակառակը, վերացական գիտութիւնը այն ժամանակ գիտութիւն է և արտայայտում մարդկային մտքի վեհութիւնը, երբ նա միանգամայն հեռացնում է պատճառական երևոյթների հետևողականութեան հարցերը և քննում մարդուն միմիայն վախճանական պատճառի տեսակէտից։ Այդպէս է գիտութիւնը այդ ասպարիզում, որը կազմում է նրա բևեռը—բնազանցութիւնը կամ փիլիսոփայութիւնը։ Այդ գիտութիւնը պարզապէս դնում է այս հարցը. ի՞նչ եմ ես և ի՞նչ՝ ամբողջ տիեզերքը. ինչո՞ւ եմ ես և ինչո՞ւ է ամբողջ տիեզերքը։ Եւ իր գոյութեան օրից նա միշտ միակերպ է պատասխանում։ Գաղափարն է արդեօք, սուբստանցիան, հոգին թէ կամքն է անուանում փիլիսոփան կեանքի էութիւնը, որ գտնվում է իմ մէջ և ամբողջ աշխարհի մէջ. փիլիսոփան միայն մի բան է ասում. որ այդ էութիւնը կայ և որ ես էլ միևնոյն էութիւնն եմ։ Բայց ինչո՞ւ համար է այն. նա չգիտէ և չէ պատասխանում, եթէ նա ճշմարիտ մտածող է։ Ես հարցնում եմ. ինչո՞ւ գոյութիւն ունենայ այդ էութիւնը։ Ի՞նչ դուրս կը գայ այն բանից,

որ նա գոյութիւն ունի և պիտի ունենայ... Եւ փիլիսոփայութիւնը ոչ միայն չէ պատասխանում, այլ և ինքը նոյն բանն է հարցնում։ Եւ եթէ դա ճշմարիտ փիլիսոփայութիւն է, ապա նրա ամբողջ աշխատանքը միմիայն կայանում է նրանում, որ այդ հարցը դնի պարզ կերպով։ Եթէ նա ամուր է կանգնած իր նպատակի առջև, ապա նա չէ կարող այլ կերպ պատասխանել այս հարցին. «Ի՞նչ եմ ես և ամբողջ տիեզերքը». «Ամեն բան և ոչինչ». իսկ հարցին թէ՝ «Ինչու», «Ինչու... չգիտեմ»։

Այնպէս որ՝ ինչպէս ուզում ես շուռ տուր փիլիսոփայութեան այդ վերացական պատասխանները, այնուամենայնիւ երբէք չես ստանալու պատասխանի նման մի բան. և դա ոչ այն պատճառով, որ պարզ և փորձնական շրջանում նրա պատասխանը իմ հարցին չէ վերաբերում, այլ այն, որ այստեղ, ուր մտաւոր ամբողջ աշխատանքը ուղղուած է գլխաւորապէս իմ հարցին, չկայ պատասխան, իսկ պատասխանի փոխարէն տացվում է միևնոյն հարցը, միայն բարդուած ձևով։

(Կը շարունակուի)

# ՕՍՄԱՆԵԱՆ ՀԱՅԵՐԻ

# ԱԶԳԱՅԻՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ *)

# (1860—1910)

---

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՈՒԹԵՐՈՐԴ

*Քրիստոնեաների զինուորագրութեան խնդիրը.—Բ. Դռան յայտարարութիւնըն և ձեռնարկը 1855-ին.—Քրիստոնեաների մերժումը.—Ռուսական առաջարկութիւնը 1867-ին.—Բ. Դռան պատասխանը.—Թիւրք կառավարութեան ձեռնարկներն 1877-ին, պատերազմի ժամանակ.—Հայերի և յոյների ընդդիմութիւնը.—Ներսէս պատրիարքի վարմունքը.—Ազգային Ընդհանուր և Եկեղեցական Համագումար Ժողովների նիստերն և որոշումներն այս առթիւ. —Խնդրի փակուելը։*

1877-ին հայ ժողովուրդն և առանձնապէս Կ.-պօլսեցիներին ծանրապէս յուզող հարցերից մէկն էլ զինուորագրութիւնն էր։ Մինչև այն ժամանակ Թիւրքիայում զինուորական ծառայութեան ենթարկվում էին միմիայն մահմեդականներն, իսկ ոչ-մահմեդականները (քրիստոնեայ և հրէայ) ազատ էին այդ պարտականութիւնից և դրա փոխարէն վճարում էին որոշ զինուորական տուրք (բէդէլի ասքէրիյէ)։ Այս տուրքը կոչվում էր ջիզիյէ և առնվում էր ամեն տարի 15 տարեկանից սկսած մինչև 75 տարեկան ոչ-մահմեդականից, մարդագլուխ մօտ 3 ռուբլի։ Բացառութիւն էին կազմում միայն մայրաքաղաքի՝ Կ. Պօլսի բնակիչներն, որոնք ընդհանրապէս ազատ էին զինուորական թէ ծառայութիւնից և թէ տուրքից։ Բայց այս խտրութիւնն իսկապէս ոչ այնքան արտօնութիւն էր քրիստոնեաների համար, որքան իրաւունքի զրկում, որովհետև քրիստոնեաների նկատմամբ

---

*) «Արօր» 1910 թ. №№ 1, 2, 3, 4, 5, 6—7, 8—9—10, 12. և 1911 թ. № 1։

ցոյց տրուած այս անվստահութիւնը խախտումն էր այն ընդհանուր հաւասարութեան, որ 1839-ից ի վեր բազմաթիւ կայսերական հրովարտակներով քանիցս խոստացուել է նրանց և միշտ էլ մնացել է թղթի վրայ...: Այս պարագան շատ անգամ վէճի առարկայ էր Բ.-Դրան և Թիւրքիայի բարենորոգումների վրայ հոգացող եւրոպական տէրութիւնների միջև:

1847-ին Թիւրք կառավարութիւնը ծովեզրաբնակ յոյներից նաւազ առաւ իր նաւատորմղի համար և գոհ մնաց դրանից, ուստի 1850-ին փորձեց քրիստոնեաներից զինուոր առնել նաև իր ցամաքային ոյժի լրացման համար: Բայց նրա այս փորձն անյաջող անցաւ, որովհետև կառավարութիւնը կրօնական խտրութիւնն արմատականօրէն լուծելու դժուարութեան առջև՝ ետ ընկրկեցաւ: Քրիստոնեաներն էլ իրանց կողմից ոչ մի փափագ և եռանդ ցոյց չտուին՝ Թիւրքերի հետ նոյն դրօշակի տակ ծառայելու:

1855-ին, Ղրիմի պատերազմից յետոյ, դաշնակից տէրութիւնների, մանաւանդ Ֆրանսիայի ազդեցութեամբ, Թիւրք կառավարութիւնն՝ ի մէջ այլ բարենորոգումների՝ զինուորական ծառայութեան հարցն ևս դրականօրէն աշխատեց լուծել և պաշտօնական յայտարարութիւն*) հրատարակեց, որտեղ անհրաժեշտ էր գտնում, որ այսուհետև ոչ-մահմեդական ժողովուրդներն ևս մահմեդականների հետ միասին բաժանեն՝ հայրենիքը զէն ի ձեռքն պաշտպանելու պարտքը: 1856 փետրվ. 18-ի Խաթթը Հիւմայունը նուիրագործեց այս յայտարարութիւնն առանձին յօդուածով (§ 17) իբր թէ վերջնականապէս հաստատելով քրիստոնեաների զինուորական ծառայութեան պարտքն և իրաւունքը: Որոշուած էր, որ քրիստոնեայ ցեղերը զինուոր պիտի տային իրանց թուի համեմատութեամբ, բայց որովհետև դեռ յատուկ օրէնք չէր սահմանուած այս մասին, ուստի կառավարութիւնը կարգադրեց այս առաջին անգամ, իբրև բացառիկ միջոց, իր հարկաւոր դատած թուով զինուոր առնել Ռումէլիի և Անատոլուի պատշաճ տեսած գաւառների բնակիչներից...: Իսկ այս թիւը նա սահմանեց 1855-ին 15,000 հոգի: Յայտարարութեան մէջ ասուած էր նաև, որ եթէ քրիստոնեայ զինուորներն ընդունակութիւն ցոյց տան, կարող են պաշտօնակալի (officier) աստիճանի բարձրանալ: Բ. Դրան այս ազդը սպասուած արդիւնքը չունեցաւ: Քրիստոնեաներն և առանձնապէս յոյներն ու բուլղարները հակառակեցին: Հայերը նոյնպէս հաճութեամբ չըն-

*) 21 շաբան 1271 թուով (9 մայիս 1855):

դունեցին այս հրաւէրը։ Բ. Դուռն այն ժամանակ իր հարկ դատած 15,000 հոգին իջեցրեց 7000-ի. դարձեալ նոյն դժկամակութիւնը քրիստոնեաների կողմից, որոնք չէին ուզում Թիւրքերի հետ միևնոյն զօրաբաժնում ծառայել զանազան հիմնաւոր պատճառներով։ Այս անյաջող միջոցի հետ զուգընթացաբար կառավարութիւնը ձեռնարկել էր յատուկ օրէնք մշակելուն զինուորական ծառայութեան համար. 1856-ի խաթթից յետոյ, երբ Եւրոպայի պահանջած վարչական և օրէնսդրական բարեփոխումների խնդիրը լուրջ կերպով Թիւրք կառավարութեան հոգածութեան առարկայ դարձաւ, Բ. Դուռն՝ ինչպէս Թանզիմաթի նախորդ շրջանում (1839) արել էր, այնպէս էլ այժմ դիմեց ֆրանսիական օրէնսգիտութեան օգնութեանը։ Բազմաթիւ եւրոպական բայց առանձնապէս ֆրանսիական զանազան օրէնքների ժողովածուներ բերել տուեց, որպէսզի նրանցից առաջնորդուելով օսմանեան նոր օրէնսդրութիւն կազմուի։ Այս նպատակով Բ. Դրան մէջ մի բարձրագոյն խորհուրդ հաստատուեց, որին անդամակցութեան հրաւիրուեցին յոյներ և հայեր ևս։ Այս խորհրդին յանձնուեց նախ և առաջ զինուորագրութեան օրէնք մշակել քրիստոնեաների կամ աւելի ճիշտը՝ ոչ-մահմեդականների համար։ Խորհրդում սկզբունքով ընդունուեց, որ զինուորագրութիւնն սկսուի 1857-ից և այս առաջին տարին քրիստոնեաներից առնուի 3500 հոգի, որ տարէ-տարի աւելանալով պիտի հասնէր մինչև 25,000 հոգու։ Բայց պէտք էր արդեօք քրիստոնեայ և մահմեդական զինուորները միացնե՞լ թէ՞ նրանց իւրաքանչիւրից տարբեր գունդեր կազմել։ Խորհուրդն այս մասին երկու տարբեր կարծիքի էր բաժանուած. մի մասը պնդում էր, թէ պէտք էր միացնել, որովհետև «Եւրոպան ցանկանում էր Թիւրքիայի զանազան ցեղերի ձուլումն, և բանակն՝ ինչպէս բոլոր ուրիշ երկիրներում լինում է՝ ամենալաւ միջոցն էր այդ ձուլման համար*)»։ Բացի դրանից, և այս պատճառաբանութիւնն անիրաւացի չէր, քրիստոնէական զանազան դաւանութիւնների պատկանող ցեղերի միջև աւելի մեծ թշնամութիւն կար, քան թէ քրիստոնեաների և մահմեդականների միջև, որը հարկաւոր էր նոյնպէս չէզոքացնել։ Եթէ անհրաժեշտ համարուէր անպատճառ ուշք դարձնել կրօնական խտրութիւնների վրայ, այն ժամանակ պէտք էր առանձին առանձին գունդեր կազմել օրթոդոքս յոյներից, կաթոլիկ հայերից, լուսաւորչական հայերից և նոյնիսկ հրէաներից։ Այս հիման վրայ կազմուած մի բանակ ան-

*) Schipoff. «Les Reformes» etc., էջ 89.

շուշտ խայտաբղետ և միմեանց թշնամի տարրերից բաղկացած մի զանգուած պիտի ներկայացնէր, որով, ներքին կամ արտաքին պատերազմի ժամանակ քրիստոնեաները կարող էին մահմեդականների դէմ կանգնել։ Այս կարծիքին հակառակ կողմը պնդում էր, թէ ճշմարիտ մահմեդականը չէր կարող քրիստոնեայ իշխանաւորին հնազանդել, և աշխատում էին համոզել, թէ ի պահանջել հարկին բանակի մահմեդական մասը հեշտութեամբ կարող էր ընկճել քրիստոնեայ մասի ըմբոստութիւնը։

Այս բոլորն ոչ մի իրական արդիւնք չունեցաւ։ Ինչպէս ոչ Թիւրք կառավարութիւնն էր անկեղծօրէն կամենում քրիստոնեաները զինուորագրելով երկրի պաշտպանութեան գործը նրանց հետ բաժանել, ոչ էլ այս վերջինները, մանաւանդ Եւրոպական Թիւրքիայի բնակիչները, հաճութիւն չէին ցոյց տալիս այս նոր միջոցին։ Իսկ եւրոպական տէրութիւնների մէջ կար մէկն, որ մեծ դժգոհութեամբ էր դիտում սկզբից ի վեր այս հարցը՝ նրա դրական լուծումը բոլորովին աննպաստ համարելով շատ տեսակէտներով*)։ Երբ 1867-ին, Թիւրքիայի բարենորոգման վերաբերեալ նա մի ընդարձակ ծրագիր ներկայացրեց միւս մեծ պետութիւններին, այդտեղ պարզ կերպով նա պատճառաբանում էր, թէ ինչու էր հակառակվում քրիստոնեաների զինուորական ծառայութեան։ «Քրիստոնեաները գիտեն,—ասում էր նա,—որ մի անգամ թրքական բանակի զինուոր գրուելուց յետոյ՝ նրանք ոչ կարող են աստիճանի յառաջացում ունենալ և ոչ էլ որևէ նշանաւոր դիրք գրաւել. ընդհակառակը՝ նրանք շարունակ թիւրք զինուորներից կախում պիտի ունենան և նրանց զոհը դառնան։ Վերջապէս, քրիստոնեաները շատ լաւ են հասկանում, որ, զինուորագրուելուց յետոյ, նրանք շատ յաճախ՝ իրանց կրօնակիցների դէմ ուղղուած բռնութիւնների գործիք պիտի դառնան մահմեդական իշխանաւորների ձեռքին»։ Այս հիման վրայ էլ ռուսական կառավարութիւնն այս միևնոյն ծրագրում առաջարկում էր, որ «սուլթանի քրիստոնեայ և հրէայ հպատակներն ազատ լինեն դարձեալ զինուորական ծառայութիւնից և դրա փոխարէն տուրք վճարեն, բայց միայն 18-ից մինչև 35 տարեկան եղողները։ Իսկ այն քրիստոնեաներն և հրէաներն, որոնք ինքնակամ կը յօժարին զինուոր գրուելու, պէտք է ընդունուեն և ծառայեն նոյն պայմաններով, ինչ որ մահմեդականների համար է սահմանուած»։ Պարտաւորիչ զինուորական ծառայութեան փոխարէն Ռուսաստանը

---

*) Այս տէրութիւնը Ռուսաստանն էր։

յաւագոյն էր համարում, որ քրիստոնեաները մահմեդականների հետ հաւասար կերպով ընդունուեն տեղական միլիցիայի մէջ, (milice locale) հասարակաց խաղաղութիւնը պաշտպանելու նըպատակով, և այս միլիցիայից ընտրուեն բոլոր ոստիկանները։ Միեւնոյն ժամանակ էական պայման էր առաջարկվում, որ այս միլիցիան մնայ իր գաւառում և դուրս չուղարկուի։ Պատասխանելով այս ծրագրին Բ. Դուռն իր՝ դեսպաններին ուղղած շրջաբերականում (25 մայիս 1867) ասում էր. «Ոչ-մահմեդականների օսմանեան բանակ ընդունուելուն գլխաւոր արգելքն եղել է այն քամահրանքն, որ զինուորական ծառայութիւնը ներշնչել է նրանց։ Բայց Թիւրք կառավարութիւնն ոչ միայն չէ թողել այս միտքն, որ նպաստաւոր է մահմեդականներին, քանի որ մինչև հիմա սրանք էին բացառապէս, որ այս արեան հարկն էին տալիս, այլ ընդհակառակն աշխատում է միջոցներ գտնել իրագործելու համար ոչ-մահմեդականի զինուորական ծառայութիւնը՝ կամ իբրև կամաւոր ընդունելով նրան և կամ այնպիսի հանգամանքների մէջ դնելով, որ տեղի ունեցած կասկածներն և քամահրանքը փարատուեն։ Բացի դրանից, օսմանեան բանակում կօզակային խառն երկու գունդ կայ՝ քրիստոնեաներից և մահմեդականներից բաղկացած»։

Իրերն այս վիճակումն էին, երբ հասաւ 1876-ի օսմանեան սահմանադրութիւնն, որի 8-րդ յօդուածի համաձայն՝ «օսմանեան կայսրութեան բոլոր հպատակներն, առանց կրօնի խտրութեան, օսմանցի էին կոչվում», և 17-րդ յօդուածն էլ ասում էր, թէ «բոլոր օսմանցիներն օրէնքի առջև հաւասար են և միեւնոյն իրաւունքներն և պարտականութիւններն ունեն, բացի կրօնական հանգամանքներից»։ Ուրեմն զինուորական ծառայութիւնն էլ հաւասարապէս պարտաւորիչ էր մահմեդականի և ոչ-մահմեդականի համար։ Այս հաւասարութեան անյապաղ իրագործման համար Բ. Դուռը ձեռնտու գտաւ այն քաղաքական խառնակ հանգամանքներում զինուորական դրօշակի ներքև առնել քրիստոնեաներին և այդ միջոցով միեւնոյն ժամանակ ուժեղացնել գոնէ իր պաշտպանողական դիրքն իր հաւանական թշնամու դէմ։ 1877 թ. յունուարին Թիւրք կառավարութիւնն իր դեսպանների միջոցով տեղեկացրեց բոլոր եւրոպական տէրութիւններին, թէ ըստ տրամադրութեան երկրի նոր Հիմնական Օրէնքի՝ սուլթանը հրամայել է, որ այնուհետև քրիստոնեայ տղաներ ևս ընդունուեն զինուորական դպրոցներում։ Այս որոշումը միեւնոյն ժամանակ պաշտօնապէս յայտնուեց բոլոր ոչ-մահմեդական հոգևոր պետերին և հրատարակուեց լրագիրներում, որ-

պէսզի ցանկացողները դիմեն զինուորական մինիստրութեան։ Ընդունելութեան պայմանները նոյնն էին, ինչ որ մահմեդական ուսանողների համար։ Բայց ահա Աբդիւլ-Համիդի մի նոր իրադէն քանդում է այս որոշումը։ Սուլթանը ցանկալի չէր համարում*), որ քրիստոնեաները զինուորական դպրոց մտնեն և այնտեղից պաշտօնակալներ դուրս գալով հրամայեն մահմեդական զինուորներին...։ Այս իրադէն սաստիկ զայրոյթ պատճառեց Միդհատ փաշային, որ անմիջապէս գրում է սուլթանի Ա. քարտուղարին, Աբդիւլ-Համիդին հաղորդելու համար, հետևեալը. «...Այն ժամանակ, երբ մենք աշխատում ենք անյապաղ ի կատար ածել բազմաթիւ կայսերական ֆէրմաններով խոստացուած բարենորոգումներից այն բոլորն, ինչ որ անմիջապէս իրագործելի է, ահա սուլթանն անցեալ օր հրամայել է, որ ոչ-մահմեդական աշակերտները զինուորական դպրոց չընդունուեն։ Սահմանադրութեան այս կարևոր կէտի, որի իրագործմանը բոլորն սպասում են, այսպէս սկզբից խախտուելն և արգելուելը մեզ չափազանց վիշտ է պատճառում...*)»։

Սակայն քրիստոնեաներին զինուորական ծառայութեան կանչելու որոշումն այնու ամենայնիւ մնում է անխախտ։ Կառավարութիւնը՝ Միդհատի աքսորից յետոյ, զինուորական դըպրոցների մուտքը քրիստոնեաների առջև փակելով հանդերձ, այնու ամենայնիւ ընդհանուր զինուորագրութեան ծրագիրն աշխատում էր յառաջ մղել և գործադրել առանց Խորհրդարանի բացման սպասելու, մանաւանդ մահմեդականներից և քրիստոնեաներից խառն ոստիկանութիւն կազմելու ծրագիրը։ Նա որոշել էր այս գործը յաջողեցնել նախ մայրաքաղաքում, Կ. Պոլսում, և ապա նոյնը տարածել գաւառներում։ Մայրաքաղաքի նոյն իսկ մահմեդական բնակիչները մինչև այն ժամանակ բոլորովին ազատ էին զինուորական ծառայութիւնից։ Իսկ այժմ կառավարութիւնն որոշել էր 6000 զինուոր առնել Կ. Պոլսից, մահմեդական և ոչ-մահմեդական։

Յատկապէս հայերին զինուորագրութեան գրաւելու համար՝ սադրազամը կանչեց Ներսէս պատրիարքին և սուլթան Համիդի անունից յայտնեց նրան, թէ կայսրը՝ շատ գոհ լինելով հայերից և վստահ լինելով նրանց հաւատարմութեան վրայ՝ ուզում է նրանց եւս մասնակից անել հայրենիքի պաշտպանու-

*) Ինչպէս ԺԵ. գլխում յիշել ենք։

**) Ալի Հայդար, «Միդհատ փաշանըն հայեաթը սիյասիյէսի...», Կահիրէ, 1322 (արաբական թուական), էջ 263.

թեան սրբազան գործին։ Այս նպատակի համար առ այժմ կարգադրուած էր Կ. Պոլսի հայերից կազմել կամաւոր զինուորների 2 վաշտ, որ կանէր 300-ից մինչև 400 մարդ ընդամենն, և սուլթան Համիդ այդ հայկական վաշտերն իր բարձր հովանաւորութեան տակ պիտի առնէր։ Ներսէս ընդունեց այդ պատուէրն, և ըստ այնմ բոլոր հայ եկեղեցիներում քարոզներ և յորդորներ կարդացուեցին զինուորագրուելու, բայց ոչ մի հայ չներկայացաւ ինքնաբերաբար այս առաջին վաշտը կազմելու։ Ժողովուրդը մեծ յուզման մէջ էր, որովհետև ռուսական պատերազմի ամենատաք ժամանակին զինուորական ծառայութեան հրաւիրուելը նրան բոլորովին չէր գրաւում։ Ժողովրդի այս յուզմանը արձագանք տուին լրագիրներն իրանց խիստ, բայց շատ իրաւացի բողոքներով։ «Հայերը դարերով և սերնդից սերունդ չէին վարժվում զէնք գործածելու և այժմ յանկարծ կամենում են նրանց ստիպել զէնք կրելու և պատերազմական բեռ երթալու։ Զինուորական գործին այդպէս անհմուտ և անպատրաստ մի ժողովուրդն, ինչպէս հայերն են, պատերազմի դաշտն ուղարկել՝ նշանակում է նրանց սպանդանոց տանել»—գրում էր Կ. Փանոսեանի Թիւրքաբարբառ, հայատառ «Մանզումէի Էֆքիարը»։ «Թիւրքիոյ ոչ-մահմեդական ժողովուրդը դարերէ ի վեր զէնք գործածելու վարժութիւնը կորուսած ըլլալէ զատ՝ հայրենիք պաշտպանելու գաղափարն ալ կորուսած ըլլալով, այդ գաղափարն ու ոգին անոնց մէջ արթննալու համար երկար ժամանակի պէտք կայ»—ասում էր «Մասիս»։ Աւելի խիստ ոճով էր խօսում և «Նոր-Դար», որի հրատարակումն այդ պատճառով էլ արգելուեց։

Նուազ կտրական ոճով չէին խօսում յունական թերթերը, թէև տարբեր պատճառաբանութեամբ։ Յոյներն ևս բացէ ի բաց ասում էին, թէ մինչև որ Թիւրքահպատակ քրիստոնեաները մահմեդականների հետ կատարելապէս հաւասար իրաւունք չվայելեն, նրանք միշտ պիտի հրաժարուեն պատերազմի երթալ և արիւն թափել այն պետութեան համար, որ նրանց վրայ իբրև խորթ մայր է մտիկ տալիս։

Զինուորական ծառայութիւնն ընդունելու համար յոյն լրագիրները հետևեալ պահանջներն էին դնում, որ հայերն ևս մեծապէս ցանկալի էին գտնում. «Քրիստոնեայ զինուորների բաժանումը, քրիստոնեայ պաշտօնակալների նշանակումը, բանակում քրիստոնեայ կրօնի անարգել գործածումը, ծառայութեան ամբողջ տևողութեան ժամանակ բացարձակապէս արգելել, որ քրիստոնեայ զինուորները դաւանափոխ լինեն յօգուտ

խղճմտութեան. բացի դրանցից՝ քրիստոնեաների և մահմեդականների քաղաքացիական և զինուորական անվրէպ հաւասարութիւնն և պետական պաշտօններում նոյնպէս լիուլի հաւասարութիւն» *)։

Օսմանեան խորհրդարանի անդրանիկ շրջանում քրիստոնեայ երեսփոխանները մէջտեղ դրին այս կարևոր հարցն և ընդդիմացան զինուորագրութեան անմիջապէս գործադրուելուն, այն առարկութեան հիման վրայ թէ՝ քրիստոնեայ կամ ոչ-մահմեդական օսմանցիներն, արդէն վճարել էին այն ելևմտական տարուայ «բէդէլը», հետևաբար չէր կարելի նրանցից թէ զինուոր առնել և թէ զինուորական տուրք, միանգամայն։

Երբ կառավարութիւնն այս ընդհանուր դժգոհութիւնը տեսաւ, նա փոխեց իր նախնական ծրագիրն և փոխանակ քրիստոնեաների վրայ իսկական զինուորական ծառայութիւնը տարածելու՝ հարկադրուած եղաւ որոշել նրանցից քաղաքային պահակախումբ կազմել յատկապէս քաղաքի պաշտպանութեան համար։ Աճապարանօք նոր կանօնագրութիւն յօրինուեց այս մասին, Կ. Պոլսի բոլոր թաղերից զինուորութեան տարիքին հասած ոչ-մահմեդականների ցուցակը պահանջուեց և յատուկ զինուորագրական յանձնաժողովներ ընտրուեցին, որոնց մէջ հայերից մտան դօկտ Սէրվիչէն, Գր. Օտեան, Միքայէլ Փորթուգալ, Սեպուհ Մագսուտ և Յակոբ Գազազեան՝ այն ժամանակի ամենից նշանաւոր հայերը։ Այս նոր օրէնքի համաձայն, բոլոր 17 տարեկանից մինչև 45 տարեկան ոչ-մահմեդականները նոր կազմուած պահակախմբի մէջ (garde civique) պիտի առնուէին և ոչ միայն քաղաքների պահպանութեան, այլ ի պահանջել հարկին նաև բերդերի պաշտպանութեան պիտի գործածուէին։ Այս օրէնքի գործադրութեան նկատմամբ Բ. Դուռը պատրիարքարաններից կանխապէս հաւանութիւն կամ խորհուրդ չխնդրեց, ինչպէս սովորութիւն էր այսպիսի ծանրակշիռ հարցերի համար։ Ներսէս պատրիարք այս առթիւ մինիստրների հետ իր ունեցած տեսակցութեան մէջ յայտնեց նրանց, թէ թէև հայերն առհասարակ պատերազմի գնալուց խրտնում են, որովհետև պարագաների բերմամբ անսովոր են զէնքի գործածութեան, բայց իրանց քաղաքը, տունն և ընտանիքը պահպանելու համար պատրաստ են զինուել, ինչպէս որ քանիցս արդէն խնդիրք է ներկայացուած կառավարութեանը՝ քիւրդերի հարս-

*) Paul Fesch, «Constantinople aux derniers jours d'Abdul Hamid». Paris, 1907. էջ 264.

տահարութիւններից և յարձակումներից ազատուելու համար։ Յոյն պատրիարքն էլ երբ տեղեկացաւ, թէ քրիստոնեայ զինուորները միմիայն քաղաքապահների դեր պիտի կատարեն և պատերազմի դաշտ պիտի չերթան, ընդունեց և մինչև իսկ շնորհակալութեան գիր գրեց կառավարութեան, միայն պահակների կանոնագրութեան մի քանի կէտերի մասին նկատողութիւններ անելով։

Ազգային Վարչութիւնը յանձն չէր կարող առնել և իրաւունք էլ չունէր՝ այդպիսի մի արտաքոյ կարգի խնդիրն իր իսկ իշխանութեամբ և պատասխանատուութեամբ լուծելու, ուստի անմիջապէս Ազգային Ժողով հրաւիրելով ներկայացրեց նրա հայեցողութեան։ Բայց ժողովուրդն ընդհանրապէս հակառակ էր նոյն իսկ իբրև քաղաքային պահակ ծառայելու։ Եղան շատերը՝ զինուորացուներից, որոնք ծածկաբար Կ. Պօլսից մեկնեցին, ազատուելու համար։

Միայն Բ. Դռան պաշտօնեայ հայերն՝ իսկոյն քաղաքային պահապան զինուորի հագուստ հագան, որպէսզի ժողովուրդն էլ տեսնէ և այդ բարձրաստիճան անձերի օրինակին հետևի։ Այդ հագուստն ամեն զինուոր իր ծախքով պիտի հոգար. կառավարութիւնը միայն զէնք պիտի տար նրան։

Երբ լսուեց, թէ նոյեմբերի 25-ին (1877) Ազգ. Երեսփոխ. Ժողովը գումարելու է արտակարգ նիստ այս հարցի մասին, ամեն կողմից՝ առանձնապէս շուկաներից՝ ժողովուրդը խումբ-խումբ թափուեց պատրիարքարան և անհամբերութեամբ սպասում էր այնտեղ, թէ հայ բարձրագոյն օրէնսդիր մարմինն ինչ դիրք պիտի բռնէր այս կարևոր խնդրում։

Ազգային Ժողովի նիստը տեղի ունեցաւ նմանը քիչ անգամ տեսնուած բազմութեամբ, բայց ոչ գումարակ. ներկայ էին 91 երեսփոխան։ Նախ կարդացուեց Քաղաքական Ժողովի տեղեկագիրն, որ ներկայացնելով Բ. Դռան 15 նոյեմբ. 1877 թուակիր ծանուցագիրը զինուորագրութեան մասին՝ հրահանգ էր խնդրում ըստ այնմ վարուելու համար։ Բ. Դռան այս ծանուցագիրն ասում էր, թէ քրիստոնեաների զինուորութեան կոչուելըն առաջ էր գալիս «սուլթանի՝ իւր ընդհանուր հպատակաց վրայ ունեցած արդարակորով համակրութենէն և առհասարակ բոլոր կայսերական հպատակներն հայրենեաց պաշտպանութեան փառքին մասնակից ընելու ամենագովելի դիտաւորութենէն», և յոյս էր յայտնվում, թէ «այս նոր և վսեմ տնօրէնութիւնը կատարելապէս պիտի գնահատուի և ընդունուի»։

Այս հրամանագրից և պատրիարքի տուած բացատրութիւն-

ներից երևում էր, որ կառավարութիւնն ուղղակի պատուիրում էր և ոչ թէ պատրիարքարանի կարծիքը հարցնում այս մասին. հետևաբար երեսփոխաններն անձնական պատասխանատւութիւնից ազատուելու համար տրամադիր էին Ազգ. Ընդհ. Ժողովի վերաբերեալ խնդիր չհամարել այդ. Նրանք ուզում էին այս ձևով խուսափել իրանց հաւանութիւնը տալուց։ Բայց ինչ որ աշխարհական երեսփոխաններն զգուշանում էին բացարձակօրէն ասելուց, եկեղեցականները չքաշուեցին, և Մատթէոս եպ. Իզմիրլեան համարձակութիւն ունեցաւ յայտնելու թէ՝ «Ազգ մը և տէրութիւն մը փոխադարձ պարտօք և իրաւունքով կապուած են իրարու հետ. բայց ասիկա այն ժողովրդեան համար է, որ երկրին և կառավարութեան տէրն է (թիւրքը), իսկ անոր համար չէ, որ հպատակ է և միայն տուրք տալու պարտաւոր (հայն և այլ ոչ-մահմեդականները)։... Հայոց ազգը չի փախչիր զինուորութենէ, բայց պէտք է գիտնայ, թէ ինչ փոխադարձ պայմաններով կապուած ենք կառավարութեան հետ. ասիկա առիթ մ'է, ինչ իրաւունքներ որ ունինք՝ պահանջելու կառավարութենէն. հաւասարութեան մէջ այնպիսի բաներ կան, որ դեռ գործադրութեան մէջ չեն. ուստի ինչպէս որ կառավարութիւնն իրաւունք ունի զօրք պահանջելու, մենք ալ իրաւունք ունինք հաւասարութեան ամեն կէտերուն գործադրութիւնը խնդրելու*)». և իբրև փաստ, թէ դեռ եւս օրէնքի առջև քրիստոնեան և մահմեդականը հաւասար չեն, յիշում է դատարանում քրիստոնեայի վկայութեան չընդունուելը։ Ներկայ ժողովուրդը շատ եռանդուն կերպով հաւանութիւն է տալիս Իզմիրլեանի այս խօսքերին։ Խորէն եպ. Նար-Պէյ նոյնպէս համաձայնվում է հայերի զինուորագրութեան, բայց միայն՝ իրանց գերդաստանի և իրանց հայրենիքի պաշտպանութեան համար ընդդէմ այն «ճիւաղ ազգերու (քիւրդերի), որոնց ճնշման տակ է մեր ազգը հակառակ օրինաց և արդարութեան»։ Ժողովի եզրակացութիւնը հետևեալն եղաւ. «Բ. Դռնէն ազդարարեալ քաղաքային զինուորագրութեան խնդիրը դարձնել ս. պատրիարք հօր, որ Քաղ. և Կրօն. Ժողովոց և ի պահանջել հարկին Համագումար (եկեղեցական) Ժողովոյ խորհրդակցութեամբը գործէ»։ Ներսէս պատրիարք, որ կառավարութեան պատուէրն ընդունելու և գործադրելու կողմն էր, դժգոհ մնաց այս որոշումից և պատրիարքարանից Ընդհ. Ժողովի դահլիճը դառնալով յայտարարեց, թէ այս որոշման մէջ «պակաս բան մը կայ, այն է, որ զինուո-

*) Ատենագր. Ազգ. Ժող., 1877, նիստ ԺԵ.

րութեան սկզբունքն, որ արդէն քանի մը տարի առաջ ընդունուած է այս Ժողովէն, այսօր ալ կը նուիրագործուի ու կը հաստատուի նորէն այս Ժողովի մէջ, եկեղեցական և ազգային պահանջմանց սահմանին մէջ. ասի չէ յիշուած*)»։ Բայց Ազգ. Ժողովը Ներսէսի այդ յայտարարութիւնը լսելուց յետոյ եւ մնում է իր նախկին որոշման վրայ, որից շատ դժգոհ մնաց Վարժապետեան։ Ներսէս աշխատում էր համոզել այն երեսփոխաններին, որոնք այս առթիւ յիշում էին հայ ժողովրդի կրած տանջանքները պատերազմի ժամանակ, թէ «այս դառն ժամանակէն ետև աղէկ օրեր պիտի յաջորդեն. տխրութեան բաժակը ցմրուրըն քամեցինք մինչև հիմա, այսուհետև ուրախութեան բաժակը պիտի ըմպեմք. անշուշտ գիշերէն ետքը կը յաջորդէ առաւօտը և ձմեռէն վերջ գարունը. ազօթենք, որ խաղաղութիւնը շուտով հաստատուի»։ Ներսէս իր այս վարդագոյն յոյսերն ապագայի մասին հիմնում էր միմիայն Աբդիւլ-Համիդի խոստումների վրայ...։ Երբ նա տեսաւ, թէ Ազգային Ժողովը այս խնդրում նրա հետ համաձայն չէ, դիմեց իր սովորական զէնքին. նա հրաժարուեց պատրիարքութիւնից, իր հրաժարականն ուղարկելով թէ Բ. Դռան և թէ Ազգային Ժողովին։ Բ. Դուռը չընդունեց նրա հրաժարականը, քանի որ այն միջոցին նրա ընթացքը Թիւրք կառավարութեան հայեացքին համաձայն էր։ Սադրազամը Գր. Օտեանին ուղարկեց նրա մօտ, յայտնելու համար թէ անյարմար է այսպիսի մի փափուկ ժամանակ պաշտօնից հրաժարուելը։ Ազգային Ժողովը դեկտեմբերի 20-ին դռնփակ նիստում այս հրաժարականի խնդիրը քննած ժամանակ՝ ձախակողմեան երեսփոխաններից մէկը, Օգսէն Խօճասարեան, շատ իրաւամբ դիտել տուաւ, թէ «ազգն երբ ընտրեց Ներսէս սրբազանը՝ յայտարարեց, թէ բարեբախտ է. բայց ասոր հետ դժբախտութիւն ունեցեր է ստէպ հրաժարող պատրիարք մ'ընտրել. չգիտեմ ինչ պատճառ ունի չունի, բայց ընտրութեան օրէն սկսեալ գրեթէ միշտ հիւանդութիւնը պատճառ ցոյց տալով կը հրաժարի և ետ կառնէ։ Եթէ այսօր ալ հրաժարականը ետ առնել տանք, երկու ամսէն նորէն կը հրաժարի և ժողովս հրաժարականի խնդրով կը զբաղեցնէ*)»։ Հրաժարականը չընդունուեց ազգային ժողովում եւ և Ներսէս շարունակեց պաշտօնավարել, անսալով Բ. Դրան և ազգի կողմից արտայայտուած կրկին բաղձանքին։

*) Անդ։

**) Ատենագր՝ Ազգ. Ժող., 1877, նիստ ԺԶ.

Զինուորագրութեան խնդիրը կրօնական-ազգային տեսակէտից քննելու կամ աւելի ճիշտը՝ նրա մերժումը կրօնական վարագոյրի տակ և եկեղեցականների միջոցով քօղարկելու համար՝ Ազգ. Վարչութիւնն որոշեց եկեղեցական Համագումար Ժողով գումարել, որ տեղի ունեցաւ Ներսէս պատրիարքի նախագահութեան տակ։ Ներկայ էին 10 արքեպիսկոպոս և եպիսկոպոս, 40 վարդապետ և 60 քահանայ, որոնց միացել էին Խառն Ժողովի 28 անդամը։ Զնայելով որ նիստը դռնփակ էր, դուրսը ժողովրդի մեծ բազմութիւն էր հաւաքուել, որի տրամադրութիւնը բացարձակօրէն աննպաստ էր զինուորական ծառայութեան։ Ժողովի մէջ եկեղեցականները մեծ ոգևորութիւն էին ցոյց տալիս վիճաբանութեան ժամանակ և ընդհանրապէս հակառակ էին կառավարութեան այս առաջարկութեան։ Համագումարը, պատճառաբանեալ 7 կէտերի վրայ հիմնուելով, որոշեց թէ «զինուորագրութիւնը ներկայ պատերազմի ժամանակ տարաժամ է»։ Այս կէտերը հետևեալներն էին։ 1) Հայը 5 դարից ի վեր զէնք չգործածելով, այժմ, պատերազմի ժամանակ, ժողովրդի վրայ զինուորական ծառայութեան պարտականութիւն դնելը յանկարծակի և խիստ կերպով փոխում է նրա գոյութեան պայմանները։ 2) Հայն արդէն վճարել էր այս (1877) և եկող տարուայ զինուորական հարկը՝ «բէդէլն», որով և ազատուած պէտք է լինէր զինուորական ծառայութիւնից այս 2 տարուայ համար։ 3) Պատերազմի սկզբից ի վեր հայերն արդէն թէ անձամբ ծառայելով բանակում և թէ զանազան նիւթական զոհաբերութիւններով օգնել են և օգնում են օսմանեան զօրքին։ 4) Պատերազմի ընթացքում հայ ժողովուրդը հազարաւոր զոհ է տուել, եկեղեցիները սրբապղծուել են, վանքերն այրուել և գիւղերն ամայացել. հետևաբար կառավարութիւնը պէտք է որ նոր զոհեր չպահանջէ հայ ժողովրդից։ 5) Ներկայ պատերազմը մահմեդական կրօնական պատերազմի ձև է առած, քանի որ կառավարութեան բերան եղող թերթերն «իսլամական սրբազան կռուի» անուն են տուել նրան և այնտեղ մեռնողներին «շեհիդ (մարտիրոս») են հռչակել. իսկ հայ եկեղեցին նզովում է այն հաւատացեալներին, որոնք սուր կը մերկացնեն իրան հակառակ մի այլ կրօնի պաշտպանութեան համար։ 6) Կառավարութիւնը զինուոր է պահանջում բոլոր հպատակներից անխտիր, յանուն հաւասարութեան՝ օրէնքի առջև, բայց այս հաւասարութիւնը միայն տեսականապէս գոյութիւն է ունեցած։ Շէրիաթը դեռ շարունակում է տիրապետել։ 7) «Վակուֆի» (իսլամական հոգևորական կալուածք) օրէնքն, որ մահմեդական կրօնի մի

*մասն է, հողի սեփականութեան լիակատար իրաւունք չէ տալիս հային. հետեւաբար և հայն իսկապէս չունի սեփական հայրենիք, ուրեմն և ոչ էլ պարտականութիւն զէն ի ձեռին այս հայրենիքը պաշտպանելու։*

*Ինչ ասել կուզէ, որ թէ առհասարակ թիւրքերն և թէ կառավարութիւնը չափազանց դժգոհ մնացին հայերի այս մերժողական պատասխանից։ Բայց դրա փոխարէն Թիւրքիայի բոլոր միւս քրիստոնեայ հասարակութիւնները լիուլի իրաւունք տուին հայոց*)։ Առանձնապէս հետաքրքրական են եկեղ. Համագումարի որոշումների 5-րդ և 7-րդ կէտերն, որոնց ճշտութեան վկայում էին նաև օտարները։ Պատերազմի սկզբից Թիւրք լրագիրներից ամենից ազդեցիկը՝ «Վաքըթ» չէր քաշուել բացարձակօրէն գրել, թէ «Ներկայ պատերազմը քրիստոնէութեան խաչակրական արշաւանքն է իսլամութեան դէմ...**)»։ Նոյն իսկ քաղաքային պահակների ծառայութեան համար, որոնք ըստ Նոր օրէնքի պէտք է մահմեդականներից և քրիստոնեաներից բաղկանային, իսլամական կրօնի պաշտպանութեան նպատակն էր առաջ մղվում։ Այդպիսի մի պահակախմբին, որ բաղկացած էր Կ.-պօլսեցի Թիւրքերից, զինուորական դրօշակ նուիրման առթիւ յանուն սուլթանի խօսուած ճառի մէջ ճառախօսն ասում էր, թէ ռուսական արշաւանքն իսլամութեան վտանգ էր սպառնում, և վստահացնում էր, թէ Մուհամմէդ մարգարէն պիտի չթողնէր, որ իր հաւատացեալները պարտուէին։ Իսկ դրօշակի վրայ էլ գրուած էր իսլամութեան ծանօթ պարբերութիւնն՝ «Աստուած մէկ է և Մուհամմէդ Նրա մարգարէն է»։ Այս պատճառով էլ այն մի քանի հայ և այլ քրիստոնեաներն, որոնք կամաւոր էին գրուել այդ պահակախմբի մէջ, յայտնեցին, թէ չէին կարող զէնք կրել այդպիսի մի դրօշակի տակ ***)։ Քրիստոնեաներին գրաւելու համար, սուլթան Համիդ զինուորութեան առաջին կամաւորներից մի քանի հոգուն իրան թիկնապահ էր ընդունել, որոնց մէջ էին մի լուսաւորչական (Զայեան) և մի կաթօլիկ հայ (Տիւզեան)։*

*Կառավարութեան յանձնարարութեամբ գրաքննութեան ատեանը լրագիրների խմբագիրներին կանչելով պատուիրել էր քրիստոնեաների զինուորագրութեան հակառակ չգրել։ Զանսացող թերթերը խափանվում էին, ինչպէս օր. «Նոր-Դարը»։*

*Զինուորագրութեան դէմ մաքառող եկեղեցականների մէջ*

---

*) «Missions Catholiques» *Թղթ. Կ. Պօլսից 15 փետ. 1878.*

**) «Le Temps» *26 մայիսի 1877.*

***) «Missions Catholiques» *1 փետրվ. 1878.*

ամենից եռանդուն բողոքողը Խորէն եպ․ Նար-Պէյն էր, որ այդ շարժման մէջ առաջնորդի դեր էր կատարում։ Նար-Պէյ եկեղ․ Համագումարի վերոյիշեալ որոշումները տարաւ յանձնեց գերմանական դեսպանին։ Նար-Պէյի այս ընթացքի միտքն ըմբռնելու համար հարկաւոր է գիտնալ, թէ Բէշիկթաշի այս քարոզիչ եպիսկոպոսը վաղուց մօտ յարաբերութեան մէջ էր ռուսական դեսպան Իգնատիեվի հետ, որի մեկնելուց յետոյ նա շարունակում էր իր յարաբերութիւնները գերմանական դեսպան իշխ․ Րէյսի հետ, որին էր յանձնուած ռուսական շահերի պաշտպանութիւնը*)։ Գերմ․ դեսպանը նոյնպէս մեծ ջանք էր գործ դնում, որ քրիստոնեաների զինուորագրութեան ծրագիրը չիրագործուի։

Այսպիսի հանգամանքների մէջ էր գտնվում գործը․ Թիւրք կառավարութիւնն սկսել էր զգալ իր ծրագրի բոլոր դժուարութիւններն, երբ ռուսական յաղթական բանակի Կ․ Պօլսի դռներին մօտենալը փոխեց երկրի վիճակը։ Քրիստոնեաների զինուորագրութեան հարցն այս կերպով մի անգամ ևս թաղուեց։

---

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԻՆՆԵՐՈՐԴ

*Ազգային Ժողովի նիստերում ատենապետի փակման ճառն և պատրիարքի բացման ճառը․—Միջադէպ պատրիարքի և ատենապետի միջև․—Քաղաքական Ժողովի հրաժարականն և նորի ընտրութիւնը․—Ազգային Վարչութեան և Երեսփոխանական Ժողովի դիւանները 1877-ի վերջը․—Ներսէս պատրիարք և Հայկական Խնդրի նախերգանքը։*

1877 թ․ մարտի 11-ին փակուեց Երեսփոխանական Ժողովի 1876/7 տարեշրջանն, որ ունեցել էր 20 նիստ, 3 նիստ պակաս նախորդ 1875/6 շրջանից։ Սովորութիւն էր, որ տարեշրջանի բացման և փակման նիստերին՝ պատրիարքը կամ Ժողովի ատենապետը բացատրութիւններ տային ազգային գործերի ընթացքի մասին։ Բացման օրը պատրիարքն՝ իբրև Ազգ․ Վարչութեան գլուխ՝ երեսփոխաններին մի ճառով ներկայացնում էր երկրի վիճակն և խօսում էր այն պէտքերի և հարցերի մասին, որոնց քննութիւնն և լուծումը կախուած էր Ազգ․ Ժողովից։

*) Նար-Պէյի այս յարաբերութիւնների մասին աւելի մանրամասնօրէն կը խօսենք յետոյ, իր տեղում։

Իսկ տարեշրջանի փակման օրն՝ ատենապետը յետադարձ հայեացք էր արձակում անցնող շրջանի վրայ։ Ցոյց տալու համար թէ ինչպէս դժգոհ էին իրանք, նոյն իսկ Ազգային Ժողովի գլխաւոր գործիչները, Ժողովի գործունէութիւնից, յառաջ բերենք այստեղ գլխաւոր կէտերն այն ճառի, որը խօսել է Ստեփան փաշա Ասլանեան՝ այդ շրջանի մասին։

«Արդարև, տեարք իմ, եթէ աչքէ անցունենք մեր տարեկան աշխատութեանց շարքը, մէջը նշանակութեան արժանի գործ միմիայն վերակազմութիւն վարչական ժողովոց կը գտնենք և այլ ոչինչ...։

«Նոր Վարչութիւն մը պաշտօնի կոչուեր է և ահաւասիկ տարին կը լրանայ, տակաւին անոր պիւճէն (budjet) չենք սահմաներ։

«Երկրին վարչական վիճակը բարենորոգուեր և ազգին աշխարհավարական դիրքը փոխուեր է և մենք մեր ազգութեան իրաւանց երաշխաւորութիւնը Ազգային Սահմանադրութեան մէջ փնտռելու պարտաւորեալ, փոխանակ զանի մասնաւոր հոգածութեամբ ամրապինդ հաստատելու և առաջի աշխարհի նուիրական և անհպելի ցոյց տալու, վերաքննութեան խաղով հիմունքը խախտելու զբաղեր ենք...։

«Տասն և եօթ տարի է սահմանադրական վարչութիւն ունինք և պատրիարքական դիւանատան մէջ ազգահամարի գրասենեակ, տակաւին այսօր Թիւրքիոյ մէջ քանի հայ գտնուիլը չգիտնալէն զատ՝ Կ. Պոլսոյ մէջ քանի հոգի բլլալնիս ճշտիւ չը գիտենք...»։

Եւ ապա, կարծես մասամբ արդարացնելու համար այս ամուլ ընթացքը, աւելացնում է.

«Ստոյգ է, որ տարւոյս մէջ երկրին քաղաքական հանգամանքն անընդհատ սրտատրոփ յուզմանց տեղի տալով՝ թոյլ չտուին մեզ անվրդով մեր պաշտօնը շարունակել։ Ստոյգ է, որ տարւոյս սկիզբները մեր վարչական ժողովականք, զոր մենք այնչափ գուրգուրալով ընտրեցինք, և վերջերը մեր սրբազան պատրիարքը, զոր մենք այնչափ կը սիրենք, մեզ յաճախ միայնակ թողլով և երբեմն հրաժարականի յուսահատական ձայներ բառնալով՝ մեր պաշտօնին ըստ օրինի կատարման շատ դիւրութիւն չընծայեցին...»։

Ատենապետն իր ճառը վերջացնում է սրտաշարժ յորդորով.

«Անցեալին ողբն ապագային օգուտ չարտադրեր. թողունք զայն վշտագին և դառնանք նոր տարւոյ գարնան նոր արևն ողջունելու...։ Ուխտենք այժմէն միահամուռ, առաջիկայ տարւոյ

մէջ մեր երեսփոխանական պաշտօնը սրտի մտօք և ճշտութեամբ կատարել։ Մաքրենք, սրբենք մեր խնդրոց տումարէն վերաքննական, հրաժարական, հարցանողական, յարձակողական բոլոր խնդիրները, և անոնց տեղ զետեղենք կարգաւ.

«1) Պիւճէ,

«2) Համարատուութիւն (հաշիւ Վարչ. գործունէութեան),

«3) Կրթական օրէնք,

«4) Վիճակագրութիւն,

«5) Վարչական կանոնադրութիւն ժողովոց և խորհրդոց և առաջնորդաց ազգիս*)»։

Ահա ինչ լուրջ ծրագիր էր գծում Ստեփան փաշա Ասլանեան Ազգային Ժողովի 1877/8 շրջանի գործունէութեան համար. Թէ որքան յաջողուեց նրա այս բարի մտադրութիւնը, այդ պիտի տեսնենք քիչ յետոյ։

1877/8 տարեշրջանը բացուեց 1877 թ. մայիսի 6-ին, երբ Թիւրքիան պատերազմի մէջ էր իրանից ուժեղ մի պետութեան հետ, և երկիրն, ուրեմն և հայ ազգն, այն միջոցին գտնվում էր քաղաքական ծանր օրերում։ Պատրիարքն այս վիճակն է ակնարկում, երբ իր բացման ճառում ասում է.

«Գիտէք թէ ինչ տագնապալից ժամանակի մէջ կապրինք և թէ այս տարին բոլոր տարիներէ աւելի վշտոց և ցաւոց տարի է...։ Ժամանակին երկրիս վրայ բերած նեղութիւններէն մեր ազգն ալ ազատ չէր կրնար ըլլալ իբրև այս երկրին ամենակարևոր մէկ տարրն և օսմանեան բարեխնամ տէրութեան ցաւոցը ցաւակից և վշտացը վշտակից մէկ ժողովուրդը...։ Նոյն միջոցին աղէտն ալ սաստկացաւ, որոյ վասն պարտաւորեցայ գրել և իմացնել բարձր. մեծ-եպարքոսին, թէ հայոց ազգը թէև ամենէն հաւատարիմ և հնազանդ հպատակն է տէրութեան, սակայն իւր կրած անչափ զրկանաց և հարստահարութեանց մասին մեր գրած ամեն խնդիրներն և թակրիրներն և Բ. Դրան գրկած շար մը հրամանագիրներն անգործադրելի մնացին, և բոլոր յոյսերնիս սպառեցաւ. մէկ ճար մը միայն մնաց, այն է՝ երկրին տիրող վեհապետին ոտքը դիմել, բողոքել և հոն ձգել նաև իմ պատրիարքական իշխանութիւնս։ Ասոր վրայ Նախարարք ի ժողով գումարեցան և խօսք տուին մեզ՝ կարգադրել մեր ամեն խնդիրը։ Նոյն միջոցին Վանայ հրդեհը վրայ եկաւ, որուն համար ալ ինչ որ պարտաւորութիւնս էր կատարեցի. Նոր բարեխնամ

*) Ատենագ. Ազգ. Ժողով.

կուսակալ մը ղրկուեցաւ հոն, որ քիչ շատ խնամք և դարման կը տանի. այժմ Վանէն ինձ հասած գրութիւնք գոհունակութիւն կը յայտնեն»:

Դեսպանախորհրդի գումարման և այս առթիւ իր կատարած դիմումների մասին Ներսէս հետևեալ բացատրութիւնն է տալիս.

«Նմանը չտեսնուած դէպք մի ալ պատահեցաւ այս տարի. եւրոպական տէրութեանց դեսպանք եկան հոս, մայրաքաղաքիս մէջ դեսպանաժողով մը կազմեցին և խորհուրդներ ըրին. ես իբր պատրիարք հայոց և իբր Ներսէս եպիսկոպոս՝ առանց Վարչութեան Ժողովներն ինձ հետ պատասխանատու ընելու, բնաւ ետ չկեցայ խօսելէ ինչ որ պէտք էր. անկէց աւելի բան մը չէի կրնար, նոյն իսկ օսմանեան տէրութեան շահուցը համար, և այս մասին, նախարարք իսկ համոզուեցան, թէև երբեմն ոմանք խէթիւ ալ նայեցան ինձ»:

Պատրիարքի ակնարկած հարցերում Ներսէսին օգնել էին առանձնապէս՝ Գր. Օտեան, դոկտ. Սէրվիչէն և մասնաւորապէս Յովհ. Նուրեան, որոնց նա հրապարակով էլ շնորհակալութիւն յայտնեց Ազգային Ժողովում: Այս անձերն այնուհետև ևս չդադարեցին Նրա օգնականներն և խորհրդակիցները լինելուց բոլոր ազգային «յարաբերական» խնդիրներում:

Խօսելով ներքին հարցերի մասին՝ Ներսէս ասում է.

«Բովանդակ այս խնդիրներով զբաղեալ՝ չկարացի ազգային դաստիարակութեան վրայ ունեցած սէրս գործով և արդեամբ ցուցունել»:

Այստեղ խօսում է Առաքել-Շահնազար-Նուպարեան միջնակարգ ուսումնարանի փակման մասին, որի պատճառն այն էր, որ ուսումնարանի դրամագլուխը բաղկացած էր օսմանեան պետական արժեթղթերից, և երբ Թիւրքիան, իրան սնանկ յայտարարելով, տոկոսների վճարումը դադարեցրեց, այս արժեթղթերի գինը սաստիկ ընկաւ և այս կերպով ուսումնարանը զրկուելով իր եկամտի միակ հաստատուն աղբիւրից՝ չկարողացաւ այլ ևս իր գոյութիւնը պահպանել: Բայց դրա փոխարէն Ղալաթիայում հիմնուեց Կեդրոնական վարժարանը, նոյնպէս միջնակարգ: Ահա ինչ է ասում դրա մասին Ներսէս՝ իր ճառում:

«Ազգ. Վարչութեան և Ուսումնական Խորհրդոյ ջանիւքը Կեդրոնական վարժարանը շինուեցաւ. շնորհակալութիւն տիւ և գիշեր անձնուիրաբար աշխատողաց, շնորհակալութիւն փոխատու անձանց, սակայն ինչպէս ամենուս ալ բաղձանքն է, ըստ որում այն վարժարանը պարտքով շինուեցաւ, պիտի ջա-

նանք մէկ կողմէն պարտքերը վճարելով միւս կողմէն բանալ զայն՝ ժամանակ չանցուցած...։ Այսօր մեր ամենէն կարեւոր և անհրաժեշտ եղող մահու և կենաց խնդիրը դաստիարակութեան խնդիրն է. ձեր մէջէն իսկ ճառեր խօսող եղաւ այս մասին. ուրեմն ամեն ճիգ թափենք ազգային դաստիարակութիւնն յառաջ տանելու համար։ Մինչև ցարդ ի չգոյէ տարերաց և նպաստից՝ դիւցազնական ջանքերով զոհողութիւններ ըրած ենք. նոյն ժողովուրդն ենք դարձեալ, պէտք է նոյն ջանքերնիս շարունակենք և կրկնապատկենք դաստիարակութեան համար, որ ազգին վերակենդանութեան միակ միջոցն է...»։

Ապա երկար յորդոր է կարդում երեսփոխաններին, որ նրանք միաբանութեամբ գործեն և իբրև ապացոյց այն բանի, թէ ինչպէս ներքին անմիաբանութիւնն ազգերի կործանման պատճառ է դառնում, յառաջ է բերում հրէաների օրինակը, որոնք «ամեն ժամանակէ աւելի ազգասէր եղած ատեն Երուսաղէմի կործանումը վրայ հասաւ և իրենց աղէտքը բազմացաւ առաւել այն ատեն, երբ տիւ և գիշեր բծախնդրութեան ելան, այնպիսի մեծ ազգ մը և Աստուծոյ ընտրեալ ժողովուրդն ըլլալով հանդերձ. քանզի կուսակցութիւնք բազում նախանձայուզութիւամբ ելնելս զմիմեամբք առնէին և իրարու խօսք չհասկնալով գիրար կործանել, ջախջախել կը նկրտէին»։ Անմիաբանութեան կործանարար հետևանքի մասին նա շարունակում է. «Լեհացւոց պատմութիւնն ալ կարդացէք. պիտի տեսնէք, որ լեհացիք ևս միևնոյն պատճառաւ իրենց ազգութեան ծառին արմատը գօսացուցած են և խորայելցւոց վիճակին բախտակից գտնուած են»(!?)։ Այս անյաջող օրինակներից յետոյ Ներսէս պատրիարք հայրաբար խրատում է «ազգին ծառայողները չը վհատեցնել, անուշնարկելով և տեսակ մը ահ ու դողով պաշարելով»։ «Միաբանեցէք,—ասում է նա,—քանզի շատ փափուկ ժամանակի մէջ կապրինք, վտանգներ պակաս չեն. մինչև անգամ մեր առ օսմանեան գահն դարաւոր և արևու լուսոյն նման յայտնի և անուրանալի հաւատարմութեան մասին մրցողներ ունեցանք, որոնք մենէ առաջ անցնիլ ուզեցին. բայց ինչպէս նախորդ մեծ. եպարքոս Միդհատ փաշային պատրիարքարանս այցելութիւն ըրած միջոցին ըսի, միմիայն մեր հայոց ազգն է, որ անկեղծ սէր և հաւատարմութիւն կը պահէ առ օսմանեան տէրութիւնն։ Զգոյշ կեցէք, մի գուցէ մեր անմիաբանութենէն օգուտ քաղել կամենան այլք...»։

Իր ճառի վերջում պատրիարքը գովեստով է խօսում օսմանեան խորհրդարանի հայ անդամների գործունէութեան մա-

սին, որոնք «անտարբեր չգտնուելով վիլայէթի Նիզամնամէին (գաւառների վարչական կանոնագրութիւն) մէջ կէս քրիստոնեայ և կէս մահմեդական անդամոց ընտրութեան և տէրութեան գանձին զիմմէթ(պարտք) ունեցողները գաւառաց մէջ ժողովական և պաշտօնեայ չըլլալու խնդրոց մէջ, որք գաւառական հարստահարութեանց մեծամեծ պատճառներն են, համախոհութեամբ վարուեցան և ամենայն անաչառութեամբ, և բոլոր ազգին պարծանք բերելու չափ պերճախօս ատենաբանութիւններով պաշտպանեցին ու յաջողեցան՝ մինչև իսկ Նախարարաց գովութեանն արժանանալ»։ Վերջացնում է նա իր խօսքը Աստուծուց հայցելով, «որ այս յորդորական խօսքերը չըլլայ թէ ամպի պէս թեթեւութեամբ անցնին, այլ Աստուծոյ շնորհիւն արմատ ձգեն ամենուդ սրտերուն մէջ»։

Այս պատրիարքական ճառն, ինչպէս տեսանք, ամփոփում էր այն բոլոր պարագաներն, որոնց մէջ էր գտնվում այն միջոցին ազգային գործն, ուստի նա մի տեսակ փոքրիկ գահական ճառ էր, յատուկ բոլոր սահմանադրական երեսփոխանական ժողովներին։ Ըստ այնմ էլ նրան տալիս էին «նախագահական ճառ» տիտղոսը։ Սահմանադրական կառավարութեան ամբողջ ձևակերպութիւնը պահպանելու համար հարկաւոր էր, որ Ազգ. Երեսփոխ. Ժողովն էլ պատասխան-ուղերձ ներկայացնէր պատրիարքին։ Այս բանը չէր նախատեսուած ոչ «Ազգ. Սահմանադրութեան» հիմնական օրէնքների և ոչ էլ Ռուսինեանի հեղինակած «Ներքին Կանոնադրութեան» մէջ, ուստի և չէր գործադրվում։ Սահմանադրական վարչութեան ձևական մասին խիստ պաշտպան եղող երեսփոխաններ գտնում էին, որ սահմանադրական հայերը պէտք է ետ չմնային ուրիշ սահմանադրական ազգերից այսպիսի մի «ստիպողական» խնդրում...։ Եւ այսպէս՝ սահմանադրական ազգի պատրանքը պահպանելու և «ամեն սահմանադրական ազգաց մէջ տիրող սովորութեան» հետևելու համար Ազգային Ժողովը նոյն նիստում Ստեփ. Փափազեանի առաջարկութեամբ միաձայն ընդունում է, որ այնուհետև «նախագահական ճառին ուղերձով պատասխանուի*)»։ Բայց Ազգ. Ժողովն այնքան դատարկ նիւթ ունէր վիճաբանութեան համար, որ ժամանակ չգտաւ ուղերձ-պատասխանով պարապուելու...։

1877 թ. մայիսին հրաժարուեց Սահակ Ապրօյի ատենապետութեան տակ գտնուող Քաղաքական Ժողովը, մի տարու չափ միայն պաշտօնավարելուց յետոյ. հրաժարման պատճառն՝ այն

*) Ատենագր. Ազգ. Ժողով.։

նկատողութիւններն և քննադատութիւններն էին, որոնք «Ղալաթիոյ օջախ» կուսակցութեան կողմից շարունա՛լ ուղղվում էին նրա հասցէին, թէև Քաղաքական Ժողովի անդամներն իրանց պաշտօնական հրաժարագրի մէջ ասում էին, թէ «իրենց ազգասիրական զգացմանց համեմատ ազգին ծառայելու բաղձանքնին այլ ևս չկրնալ ի գործ դնելնուն համոզուած են», այդ էր պատճառը նրանց հրաժարուելուն...: Ներսէս շատ դժգոհ մնաց և աշխատեց, որ հրաժարուածները վերստին պաշտօնի կոչուեն, մինչև իսկ պնդեց, որ եթէ նրանք նորից չընտրուեն, ինքն էլ կը հրաժարուի պատրիարքութիւնից: Եւ իրօք, երբ տեսաւ, թէ այն անձերը չխնդրուեցին շարունակել իրանց պաշտօնավարութիւնը մինչև երկամեայ շրջանի վերջն և ոչ էլ նորից ընտրուեցին, ինքն ևս խռովեց և հրաժարուեց: Հարկ եղաւ նորից պատգամաւորներ ուղարկել, նորից աղաչել, պաղատել, որ ետ դառնայ. և Ներսէս դարձաւ, բայց այս անգամ մի լաւ յանդիմանական կարդաց երեսփոխանների երեսին: «Մէկ կողմանէ կը տեսնեմ, որ դուք իմ վրայ համակրութիւն ունիք, բայց միւս կողմանէ զիս մտիկ չեք ըներ: Հազար անգամ կուխ մ՛ընէք ըսեր եմ, դարձեալ կը կռուիք, կը գժտիք և կը պառակտիք իրարու դէմ փցուն բաներու համար...»: Այս խօսքերը շատ ծանր էին, և Ազգ. Ժողովի Ա. ատենապետը, Ստեփան փաշա Ասլանեան, ուզելով Ժողովի արժանապատւութիւնը պաշտպանել, հարկ համարեց շատ քաղաքավարի, բայց շատ կտրուկ կերպով Ներսէսին հասկացնել, թէ նրա նկատողութիւններն և խրատներն ևս պէտք է որ սահման ունենան: «Սրբազան Հայր,—ասաց նա,—... Ձեզ մեծ յարգանք ու պատկառանք ունինք, ուստի կը տոկանք և կը հանդուրժենք: Սակայն Դուք սահմանադրական պատրիարք էք...: Ձեր Սրբազանութիւնը քաջ գիտէ, թէ սահմանադրական պատրիարք մը չունի իրաւունք «իմ խօսքիս մտիկ ըրէք» ըսելու Երեսփոխանական Ժողովին. չունի իրաւունք մեղադրելու Ազգային Ժողովը թէ փցուն բաներով ժամավաճառ կըլլայ...: Պատրիարքնիս կը սիրենք, բայց աւելի քան զպատրիարք Սահմանադրութիւնն ունինք. նա պէտք է տիրէ ամենուն վրայ»: Ապա Ասլանեան ջատագովում է կուսակցութիւնների գոյութիւնն Ազգային Ժողովում և բացատրում է, թէ «անկարելի է կուսակցութիւնները Ժողովին մէջէն վանել»: Ատենապետի այս վերջին խօսքերին անմիջապէս աւելացնում է Ղալաթիոյ օջախի անդամներից մէկը՝ Օգսէն Խօջասարեան. «Չէ թէ չենք կրնար վանել, այլ չպիտի վանենք կուսակցութիւնները»: Ուրիշ երեսփոխաններ մէջ մտան և զանազան եղանակ-

ներով Ներսէսի սիրտը հանդարտեցրին, բայց այնուամենայնիւ նրա պահանջը՝ հրաժարուած Քաղաքական Ժողովի անդամների վերընտրուելու մասին՝ չիրագործուեց։ Այս վերջինների մեծ մասը, տեսնելով Ազգ. Ժողովի տրամադրութիւնը, յայտարարեց, թէ իրանց հրաժարականն անդառնալի էր։

Քաղաքական Ժողովի հրաժարականն ընդունուելուց յետոյ Ընդ. Ժողովը ըստ կանոնի իր Մայր Դիւանին յանձնեց, որ Ատենապետաց Դիւան հրաւիրելով նոր ընտրելիների ցուցակ պատրաստէ և ներկայացնէ Ազգ. Ընդհ. Ժողովին։ Այս «Ատենապետաց Դիւանն» իսկապէս Ընդհանուր Ժողովի մի խտացումն էր։ Ինչպէս յայտնի է, Ազգ. Ժողովի երեսփոխաններից ընտրուած 8 Դիւանները կամ Խորհուրդներն (3-ական անդամից բաղկացած) ընտրում են իրանց միջից մի մի ատենապետ։ Ահա այս 8 ատենապետներն Ընդհ. Ժողովի ատենապետի նախագահութեան տակ կազմում էին «Ատենապետաց Դիւանը»։ Երբ այս Դիւանը պատրաստեց ընտրելիների ցուցակն, որ Քաղաք. Ժողովի անդամների (14) կրկին թուովը անուններ էր պարունակում, ըստ Ներքին Կանոնագրութեան (յօդ. 47 Զ.) նախ և յառաջ նա հարցրեց պատրիարքի կարծիքը։ Ահա այն ժամանակ Ներսէս պահանջեց, որ հրաժարուած Քաղաք. Ժողովի բոլոր անդամների անուններն էլ մտցուեն թեկնածուների այդ ցանկում։ Ատենապետաց Դիւանը համաձայնուեց դրան, բայց այս անգամ հրաժարուածները չհամաձայնուեցին իրանց թեկնածուութիւնը դնել, որով հարկ եղաւ, որ ցուցակը նորից լրացուի ուրիշ անուններով։ Քիչ էր մնում, որ այս հանգամանքը նորից պատճառ դառնայ Ներսէսի հրաժարականին, որը նա հազիւ մի քանի օր յառաջ ետ էր առել։ Այս կերպով վերակազմուած ընտրելիների ցուցակի վրայ յուլիսի 1-ին 14 հոգի ընտրուեցին. բայց որովհետև նրանց մեծ մասը չպատասխանեց իրանց եղած հրաւէրին, ուստի յուլիսի 22-ին նոր ընտրութիւն և ապա սեպտեմբերին դարձեալ ընտրութիւն կատարելով հազիւ հազ կարելի եղաւ ամբողջացնել Քաղաքական Ժողովի կազմը, որ պիտի պաշտօնավարէր միայն մէկ տարուայ չափ, մինչև 1878 թ. յուլիս, այսինքն մինչև Նախորդի ընդհատուած երկամեայ շրջանի վերջը, երբ լրանում էր նաև Կրօնական Ժողովի շրջանը։ Այս ձևով կազմուած Ազգ. Վարչութիւնն էր, որ ղեկավարում էր ազգային գործերն, երբ «Հայկական Խնդիրը» միջազգային հարց դարձաւ նախ Սան-Ստէֆանօյում և ապա Բէրլինում։ Աւելորդ չենք համարում յիշատակել այստեղ, թէ որո՞նք էին կազմում ազգային պաշտօնական մարմիններն այդ պատմական շրջանում։

Քաղաքական Ժողովի Ա. ատենապետն էր Աւետիս Քօլօլեան, Բ. ատենապետը՝ Էլիաս Զայեան։ Ա. ատենադպիրը՝ Մատթէոս Ալիքսանեան, Բ. ատենադպիրը՝ Գէորգ Քըլըճեան։

Կրօնական Ժողովի Ա. ատենապետն էր Խորէն եպիսկ. Մխիթարեան, Բ. ատենապետը՝ Գէորգ աւագ քհնյ. Արծրունի։ Ա. ատենադպիրն էր Յակոբ Աշոտ վարդապետ Փափազեան, Բ. ատենադպիր՝ Խաչատուր քահ. Տէր-Գաբրիէլեան։

Այս երկու Ժողովները միասին կազմում էին Ազգային Վարչութիւն (Խառն Ժողով) պատրիարքի նախագահութեան տակ։

Այս միջոցին Ազգային Ժողովի անդամների թիւը միայն 122 էր, այն է՝ օրինական 140 թուից 18 պակաս. 18 երեսփոխանի տեղ բաց էր։ Այդ 122-ից էլ հազիւ կէսն էր կանոնաւորապէս Ժողով յաճախում։

Ազգային Ժողովի դիւաններն էլ հետեւեալ անձերից էին կազմուած.

1. Մայր Դիւան, այն է Ազգային Երեսփոխանական Ժողովի՝

Ա. ատենապետ՝ Ստեփան Ասլանեան
Բ. » Յովհաննէս Նուրեան
Գ. » Տիգրան Եուսուֆեան.
Ա. ատենադպիր Համբարձում Ալաճաճեան
Բ. » Մկրտիչ Միլիքեան
Գ. » Ատովմ Տէրոյենց.

2. Ձեռնհասութեան Դիւան.
Խորէն արքեպ. Նար-Պէյ՝ ատենապետ
3. Դաստիարակութեան Դիւան.
Յովհաննէս Նուրեան, »
4. Կալուածոց Դիւան.
Բարսեղ Հալաճեան, »
5. Յարաբերութեան Դիւան.
Միքայէլ Մամիկոնեան. »
6. Համարակալութեան Դիւան.
Սենեքերիմ Մանուկեան, »
7. Իրաւասութեան Դիւան.
Մատթէոս եպ. Իզմիրլեան, »
8. Նախաձեռնութեան Դիւան.
Գէորգ Սթիմարաճեան, »
9. Խմբագրութեան Դիւան.
Կարապետ Իւթիւճեան, »

*Սակայն Ներսէս պատրիարք, ինչպէս ինք անձամբ էլ յայտնեց Ազգային Ժողովին, Քաղաքական և Կրօնական Ժողովները պաշտօնապէս մասնակից չէր անում Հայկական Խնդրի առթիւ իր արած դիմումներին, այլ գործում էր իր անձնական պատասխանատուութեան տակ։ Այսպէս էր կացութիւնը թէ Կ. Պօլսի դեսպանախորհրդի ժամանակ, երբ նա ջանքեր էր անում հայոց գանգատներն ևս նրա խորհրդակցութեան առարկայ դարձնել՝ թէև անյաջող, թէ այն ժամանակ, երբ Լօնդօնում և Պարիզում 1877-ի սկիզբները հրատարակել տուեց Հարստահարութիւնների տեղեկագիրն*), և թէ՝ երբ պատերազմից յետոյ Հայկական Խնդրի առթիւ նրա դիւանագիտական յարաբերութիւններն անհամեմատ մեծ ծաւալ ստացան։*

*Ըստ այսմ՝ Ազգային Վարչութեան Խառն Ժողովը յամենայն դէպս պատասխանատուութիւնից զերծ էր մնում։ Ժամանակի պարագաների համաձայն՝ գործունէութեան այս եղանակը աւելի նպատակայարմար էր համարվում։ Իսկ այն անձերն, որոնց խորհրդով շարժվում էր Ներսէս կամ որոնք ազդում էին նրա վրայ, Ազգ. Վարչութեան մէջ պաշտօն չունէին և հրապարակի վրայ չէին երևում, ինչպէս պիտի պատմենք իր տեղում։ Վարժապետեան այն միջոցին, 1878-ի առաջին կիսամեակին, և ոչ իսկ գալիս էր պատրիարքարան. ուստի նրա և Խառն Ժողովի որոշումով, պատրիարքարանի ընթացիկ գործերը վարելու համար Խորէն եպ. Մխիթարեան պատրիարքական տեղապահի պաշտօն էր կատարում, խորհրդականի տիտղոսով։*

*Ազգային Ժողովը 1877 թ. դեկտեմբերի 20-ի նստից յետոյ այլևս գումարման չհրաւիրուեց ի նկատի ունենալով Կ. Պօլսի պատերազմական դրութեան մէջ լինելն և առհասարակ երկրի ծանր քաղաքական կացութիւնը։ Ներսէս դեռ ևս 1877 թ. մայիսին խորհուրդ էր տուել երեսփոխաններին այդ իսկ պատճառով առժամանակ դադարեցնել Ընդհ. Ժողովի նիստը։*

---

*) «Rapports sur l'oppression des arméniens en Arménie». Londres, Gilbert & Rivington, **1877**, in 8°. *64 էջ։*

«Les Arméniens de Turquie». Rapports du patriarche arménien de Constantinople à la Sublime Porte, Paris, **1877**, in 8°.

*Այս տեղեկագիրը (Ներսէսին Բ. Դրան ներկայացրած պաշտօնական զեկուցագիրը) 1877 թ. մարտին տպագրուած է Բրիւսէլի* «Le Nord» *լրագրում, որ ռուսական կառավարութեան բերանն էր արտասահմանում։*

*Այս միևնոյն լրագրում տպուած է նաև, բողոքի ձևով, Կ. Պօլսից մի հայի գրած հերքումը Ներսէսի՝ անգլ. դեսպան Լէյըրդի հետ ունեցած հակառուսական խօսակցութեան մասին, որն յիշատակել ենք ԺԶ. գլխում։* («Le Nord», *29 օգոստ. 1877*)։

Երբ 1878 թ. յունիսին Ազգ. Երեսփոխ. Ժողովը նստի հրաւիրուեց, նա շատ տեսակէտներով՝ գոյութեան բոլորովին նոր շրջան էր սկսում։ Մի նշանաւոր դաշնագրում արձանագրուել էր Հայկական Խնդիրն, որ պիտի նուիրագործուէր մի ուրիշ՝ միջազգային դաշնագրով։ Այս էր, որ այնուհետև պիտի կազմէր գլխաւոր առանցքն հայկական կեանքի և ազգային գործունէութեան։ Ուստի մենք փակում ենք այստեղ Ազգային Սահմանադրութեան այս 17-ամեայ (1860—1877) ժամանակամիջոցն իբրև Առաջին Շրջան։ Բայց նախ քան յետագայ դէպքերի նկարագրութիւնն սկսելը՝ կարևոր ենք գտնում մի լրացուցիչ ընդհանուր տեսութիւն անել այս Առաջին Շրջանի վրայ։

ՍԱՐՈՒԽԱՆ

(Կը շարունակուի)

# ՃՈՐՏԵՐԻ ԱԶԱՏԱԳՐՈՒԹԵԱՆ ՅԻՍՆԱՄԵԱԿԸ
# 1861—1911

*(19 փետրուարի)*

---

*Այս 1911 թ. փետրուարի 19-ին լրացաւ մարդկութեան և ռուսական ազգի տարեգրութիւնների մէջ մի հռչակաւոր պատմական գործի, ակտի յիսնամեակը։ Լրացաւ յիսնամեակը այն մեծ օրի, երբ Ալէքսանդր II կայսրը, զգալով պատմական անհրաժեշտութիւնը, դրդուած ժամանակի և քաղաքակրթութեան հրամայողական պահանջից, մղուած պետական նկատումներից և գիտակցօրէն գիտակցելով պատմական պրոցէսսի ընթացքին, մղուած նաև մարդասիրական զգացումներից, ստորագրեց մի հրովարտակ, որով ջնջեց ճորտութիւնը և ազատագրեց 23 միլիոն գիւղական ժողովուրդ ճորտութիւնից։ Պատմական այդ մեծ ակտի շնորհիւ՝ 23 միլիոն ճորտեր դարձան ազատ մարդիկ, նման միւս մարդկանց, և վերջ դրվեց այն ստրկութեան, որի մէջ նրանք տառապում էին 200 երկար և ձիգ տարիներից ի վեր։*

*Հայ ժողովուրդը չէ կարող գաղափար ունենալ ճորտութեան մասին, որովհետև մեր երկրում ճորտութիւն չէ եղել։ Մեր երկրի ժողովուրդը, գիւղական ժողովուրդն ևս թէև մեծամեծ տառապանքներ, նեղութիւններ է կրել, հարստահարութիւններ է ենթարկուել, բայց ճորտութիւն չէ տեսել այն ձևով, ինչպէս որ գոյութիւն ունէր Ռուսաստանում։*

*23 միլիոն գիւղացիներ ճորտեր էին, այսինքն նրանք պատկանում էին ոչ թէ իրանց, ոչ թէ ազատ մարդիկ էին, այլ իբրև գրաւ, իբրև տաւար նրանք պատկանում էին պոմէշչիկներին՝ հողատէրերին, որոնք նրանց վրայ կեանքի և մահուան իրաւունք ունէին, այսինքն լիակատար իրաւունք ունէին վարուել նրանց հետ՝ ինչպէս կամենում էին, վաճառել՝ ինչպէս վաճառում են եզը, ձին, շունը, փոխանակել առարկաների հետ,*

ծեծել նրանց, գանահարել, աշխատեցնել՝ որքան կամենան՝ ձրիաբար, սպանել նրանց, կախ տալ, խլել նրանց կանանց, աղջիկներին, երեխաներին և ծախել կամ նուիրել ուրիշներին, պահել իբրև հարճ։

Սարսափելի կեանք էր ճորտերի կեանքը. Նրանց ամբողջ կեանքը անցնում էր ծանր և դաժան աշխատութեան մէջ. Նրանց բանեցնում էին իբրև գրաստներ, որովհետև իսկապէս նրանց մարդ չէին համարում։ Եթէ մի ճորտ տղամարդ կամ կին հիւանդանում էր և սկսում էր ցաւից տնքալ, հառաչել, պոմեշչիկի կինը կամ աղջիկը ասում էին. «Տեսէք այս անպիտանին, այնպէս է տնքում և հառաչում, կարծես մեզ պէս մարդ լինի, կարծես ազնուական լինի»։

Ճորտը առաւօտից երեկոյ իր կնոջ և երեխաների հետ աշխատում էր իր տիրոջ կամ աղայի համար դաշտերում, տանը, գոմերում, հանքերում և փոխարէնը նոյնիսկ մի կուշտ փորով ուտելու հաց չէր ստանում. Նրանց մեծ մասը ապրում էր կիսաքաղցած, կիսամերկ, խոնաւ և ցուրտ բնակարանում։

Դուք կարող էք ասել, որ այսօր էլ, երբ ճորտութիւնը այլևս գոյութիւն չունի, աղքատը դարձեալ ազատ չէ. բանւորը, աշխատաւորը ազատ չէ և գերի է փողատիրոջ, կապիտալիստի ձեռքում։ Ճիշտ է, կարիքը յաճախ ստիպում է չքաւորին, բանւորին ապրել ստրկութեան մէջ. յաճախ խեղճերը ստիպուած են լինում իրանց երեխաներին տալ այս և այն վարպետին աշակերտութիւն անելու ձրիաբար միայն մի փոր հացի համար և այդ աշակերտ-երեխաները մեծ զրկանքներ են կրում, ծեծ են ուտում. ճիշտ է, այսօր ծանր է բանւորների վիճակը ֆաբրիկաներում, գործարաններում, հանքերում, և ամեն տեղ բանւորը կարիք է զգում, ծանր աշխատանք է կրում, երբեմն նոյնիսկ քաղցած է մնում իր ընտանիքով, բայց այնուամենայնիւ, որքան էլ այսօր չքաւորի և բանւորի կեանքը ծանր լինի, նա հազարապատիկ աւելի լաւ է և մխիթարական, քան ճորտերի կեանքն էր. այսօրուայ խեղճը, բանւորը իր առաջ ունի յոյսը լաւ ապագայի, լաւ, պայծառ և երջանիկ օրերի, բայց ճորտերը զուրկ էին այդ յոյսից. Նրանք ծնվում էին ստրուկներ և մեռնում ստրուկներ։

Եւ ահա այդ անմխիթար, այդ անյոյս ճորտական կեանքն, իրաւունքն էր, որ 200 տարի գոյութիւն ունենալուց յետոյ տապալուեց, կործանուեց 50 տարի սրանից առաջ, 1861 թուին, և տապալողը, կործանողն եղաւ Կայսր Ալէքսանդր II, որ դրա

համար և ստացաւ «Ազատարար» մականունը երախտագէտ ժողովրդից։

Այժմ տեսնենք նախ, թէ ինչպէս գոյացաւ ճորտութիւնը Ռուսաստանում, և ապա՝ ինչպիսի հանգամանքների մէջ Կայսր Ալէքսանդր II կատարեց իր մեծ և բարերար գործը։

I

Ճորտատիրական իրաւունքը, ինչպէս ամեն մի պատմական երևոյթ հասարակական կեանքի, միանգամից չձուլուեց կազմ ու պատրաստ կաղապարով, այլ կազմուեց հետզհետէ, անցնելով մի քանի ֆազաներ, մինչև որ հասաւ իր հասունութեանը XVIII դարում, որ նրանից յետոյ սկսուեց քայքայուել... Սակայն մահը հասաւ շատ ուշ՝ գրեթէ մի դարից յետոյ։

Ճորտատիրական իրաւունքը իսկապէս մոսկովեան իշխանութեան—թագաւորութեան—ժառանգութիւն է. և երբ նա տարածուեց համայն Ռուսաստանի վրայ, այդ ինստիտուտը մտցրեց իր ոտը կոխած տեղերում՝ Մալօրոսիայում, մեր Կովկասում և այլն. ազատ մնաց միայն Սիբիրի գիւղացին։

500—600 տարի մեզնից առաջ բաժան-բաժան եղած ռուս իշխանութիւնները սկսում են «հաւաքուել», միանալ Մօսկվայի իշխանութեան հովանաւորութեան տակ։

Մօսկվայի իշխանութիւնը բախտաւոր աշխարհագրական դիրք ունէր. նա հեռու էր թէ այն ժամանակ զօրեղ Լիտվա-Լեհաստանից, թէ Թիւրքերից։ Հասկանալի է, որ ժողովուրդն էլ պիտի ձգտէր վերաբնակուել մի այդպիսի համեմատաբար անդորր երկրում, և այս հանգամանքը իր հերթին պիտի բարձրացնէր իշխանութեան նշանակութիւնը։

Մօսկվայի իշխանները հետզհետէ հարստանում, ուժեղանում էին, և շնորհիւ դրան և իրանց խորամանկ, հեռատես քաղաքականութեան՝ տիրեցին այլ իշխանութիւնների՝ Տվէրի, Եարօսլավլի, Նիժնի Նօվգորոդի և այլն։

Թէ Մօսկվայի իշխանութեան և թէ նրան միացած մասերի մէջ հողը նկատվում էր որպէս իշխանի, թագաւորի սեփհականութիւն, իսկ հպատակները միայն օգտվում էին այդ հողից, փոխարէնը տալով որոշ տուրք, հարկ։ Թագաւորը հողը բախշում էր և բօյարների՝ ի տրիտուր նրանց պետական ծառայութեան, կամ վանքերին, եկեղեցիներին՝ հոգու փրկութեան համար աղօթելու։ Այդպիսով հողի տէրերն էին՝ թագաւորը

բոյարները և վանքերը։ Իսկ մշակողն էր գիւղացին, որ ռուսերէն, ինչպէս գիտէք, կոչվում է крестьянинъ—քրիստոնեայ։ Բայց крестьянинъ նա կոչվում էր միայն այն ժամանակ, երբ մշակում էր հող. երբ նա թողնում էր հողի մշակութիւնը, այն ժամանակ կոչվում էր «ազատ մարդ», ու հողին վերադառնալով կրկին ստանում էր крестьянинъ կոչումը։ Այն ժամանակ չկար դասակարգային բաժանումն։ Բաժանումը ըստ արհեստի, զբաղմունքի էր, և մարդ ազատ էր մէկ զբաղմունքը փոխել միւսով՝ առանց արգելքի։

Այդ զբաղմունքների տեսակէտից մարդիկ բաժանվում էին երկու կարգի՝ «тяглые» և «служилые». գիւղացիները և վաճառականները հարկ էին տալիս, «լուծ էին քշում» (тягло—լուծ) և կոչվում էին «լծկան մարդիկ». «служилые» կոչվում էին բոյարները և այն ամենքը, որոնք, փոխանակ հարկ տալու, այլ լուծ էին քաշում՝ անձամբ ծառայում էին հայրենիքին, գլխաւորապէս զօրքերում։

Երկու կոչումներն էլ հաւասարապէս հարկաւոր էին հայրենիքին և միևնոյն պատիւն ունէին։ Այսպէս՝ հարուստ վաճառականի պատիւը շօշափելու համար սահմանուած էր 50 ր. տուգանք, իսկ մանր բոյարի որդունը՝ միայն 5 րուբլի և այլն։ Եւ գիւղացու պատիւը շօշափելու համար սահմանուած էր տուգանք, ի հարկէ շատ պակաս, համեմատած նրա տնտեսական դրութեան, բայց արդէն այդ տուգանքը ապացոյց է այն հանգամանքի, որ գիւղացին էլ նկատվում էր որպէս իրաւատէր մի անձ, անկախ անձնաւորութիւն։

Ինչպէս և այժմ, գիւղացիները ապրում էին գիւղերում՝ սովորաբար 5—6, սակաւ դէպքերում աւելի տներով. այդ բնակութեան տեղը կոչվում էր сельцо, որ ունէր իր եկեղեցին։ Կային և աւելի քիչ բնակութիւններ, սովորաբար անտառի կողքերին՝ деревня («дерево» բառից)։ Ասացինք, որ հողը նկատվում էր որպէս իշխանի, բոյարների և վանքերի սեպհականութիւն, իսկ գիւղացին ազատ կապալառու էր այդ հողերի, նրա բոլոր հետևանքներով. պայմանագրի վերջանալուց յետոյ երկու կողմն էլ կամ նոր պայման էին կապում, կամ հեռանում իրարից։ Բայց հասկանալի է, որ հողատէրը աւելի ուժեղ պիտի դուրս գար այս կռուից և վերջ ի վերջոյ ընկճէր գիւղացուն։

Ի նկատի պիտի ունենալ և հետևեալ կարևոր հանգամանքը. ազատ մշակուած հող այն ժամանակ քիչ կար. վարելու համար յաճախ կտրատում էին անտառներ, հողը մաքրում արմատներից և ապա ցանում. ինչպէս տեսնում էք, բաւակա-

նէն և թանգարժէք աշխատանք պիտի գործ դնէր հողի մշակումը։ Պէտք էր ունենալ և՛ լծկան անասուն, և՛ գործիք, և՛ սերմ, և՛ հացի այնքան պաշար, որ դիմանար մինչև հունձը, ու ապա փող՝ հարկի համար։ Մի խօսքով՝ այն, ինչ որ քաղաքատնտեսութեան մէջ անուանում են կապիտալ։ Իսկ որտեղից պիտի ունենար գիւղացին այդ ամենը, և այն էլ այն ժամանակուայ «թալանի» շրջանում։ Պարզ է, որ նա պիտի դիմէր հողատիրոջ օգնութեանը, որը ստանում էր սովորաբար շատ ծանր պայմանով։ Գիւղացին պայմանաւորվում է մշակել հողը և տիրոջը տալ «բէկար» (барщина) փոխանակ նրա տուած օգնութեան (սերմ, հարկափող և այլն), իսկ զուտ հողի համար՝ «оброкъ»—կապալ՝ փողով կամ հացահատիկով։ Ի հարկէ կապալը կախուած էր հողի քանակութիւնից։ Իսկ հող նա վերցնում էր ի հարկէ այն քանակութեամբ, որքան ուժը պատում էր, սովորաբար 18-ից մինչև 24 դեսեատին, նայած հողի տեսակին։

Այդ կապալը ձևակերպվում էր պայմանագրով «порядная громата», որոնց նմուշները մնացել են ռուս պատմագրութեան մէջ։

Հասկանալի է, որ զանազան պատճառներով կապալառու գիւղացին վերջ ի վերջոյ ըստ մեծի մասին իր ժամանակին չէր կարողանում կատարել պայմանագրի պահանջները. հողատիրոջը պարտական էր մնում և կամայ ակամայ մնում էր նըստած այդ հողի վրայ, որքան էլ ծանր լինէին ապագայ պայմանները։

Եւ մենք վկայ ենք լինում այն հանգամանքին, որ արդէն XVI դարի կիսում ազատ գիւղացին՝ տնտեսական պատճառներից դրդուած՝ այլ ևս չէ փոխում իր կապալը, նստում է իր տեղը «прикрѣпляется къ землѣ».

Այդ նստակեցութեանը (թող ներուի մեզ այդպէս թարգմանել «прикрѣпленіе къ землѣ») նպաստում էր և մի ուրիշ հանգամանք։

Մենք տեսանք, որ գիւղացին հարկ էլ պիտի տար պետական գանձարանին։ Բայց ինչ ձեռնտու էր, նամանաւանդ այն ժամանակ, երբ պետութիւնը լաւ կազմակերպուած չէր որպէս ադմինիստրատիվ մի մարմին, գործ ունենալ առանձին առանձին անհատների հետ, նամանաւանդ նրանց հետ, որոնք չունէին անշարժ սեպհականութիւն։ Եւ ահա գանձարանը ստեղծում է «круговая порука», համայնքի պատասխանատուութիւնը, մի ինստիտուտ՝ որ գոյութիւն ունեցաւ Ռուսաստանի գիւղացիների վերաբերեալ մինչև 1900 թիւը, իսկ մեզ մօտ՝ մինչև այժմ։

Դրա էութիւնը, ինչպէս գիտէք, նրանումն էր կայանում, որ հարկատու մարմին նկատվում էր գիւղը, գիւղական հասարակութիւնը, որը իր մէջ բաշխում էր հարկը այս կամ այն կերպ։ Պարզ է, որ համայնքը հեշտ կերպով բաց չէր թողնի իր այն անդամին, ով կուզենար նրանից հեռանալ. չէ՞ որ նրա թողած հողի հարկը պիտի ծանրանար հասարակութեան վրայ. իսկ հող այնքան կար, որ ոչ ոք աւելին ունենալու կարիք չէր զգում։

Ձեռնտու չէր այդ հեռանալը և գանձարանի համար, և ահա 16-րդ դարի կիսում պետութիւնը իր հողի վրայ հաստատուած ազատ կապալառու-գիւղացուն (черные крестьяне) արգելում է տեղափոխուել այլ տեղեր։

Դժուար էր գիւղացու դրութիւնը այս դէպքում. հողը վատ էր մշակվում և տարէ-ցտարի նրա ոյժը ընկնում էր. երկրում էլ տիրում էին անվերջ պատերազմներ, որոնք մեծացնում էին հարկի չափը։ Հողատէրը, գանձարանն ու ազնուականը նեղում էին պարտականին։ Եւ կան բազմաթիւ վկայութիւններ այն եւրօպացիների, որոնք այդ ժամանակ ճանապարհորդել են մոսկովեան թագաւորութեան մէջ, թէ ինչ սարսափելի դրութեան էին հասել գիւղացիները։

Զարմանալի չէ, որ վերջ ի վերջոյ գիւղացիները՝ թողնելով հողը՝ փախչում են «ծայրերկիրները»— окрайны։ Բուն երկիրը ամայանում էր, արտերը խոպանանում, ծածկվում անտառով, մացառներով։ Մի անգլիացի պատմում է, որ Վոլոգդայից մինչև Եարօսլավլ՝ 150 վերստի վրայ՝ նա հաշուել է 50 գիւղ, մի քանիսը շատ մեծ, որոնց բնակիչները թողել-փախել էին։ Մուրոմում, որը 1566 թուին հաշուվում է եղել 587 տուն, ութ տարուց յետոյ հազիւ մնացել էր $^{1}/_{5}$-ը. 476 տունը թողել-փախել էր…

Պէտք է ասել, որ պետութիւնն էլ սկզբում հաշտ աչքով էր նայում այդ փախուստին. փախչողները՝ հաստատուելով ծայրագաւառներում՝ պաշտպանում էին պետութեան սահմանները՝ թիւրքերի, լիտովցիների արշաւանքներից, թալանից։

Ի՞նչ դրութեան մէջ էին «հողին կպած» գիւղացիները։

Երևակայեցէք երկու հարևան հողատէրեր։ Մէկի մօտ կան այնքան գիւղացիներ, որ աւելորդ են՝ եղած հողի մշակութեան համար, սակայն պարտական լինելով հողատիրոջ՝ չեն կարողանում անցնել ուրիշ կապալի։ Միւսին՝ ընդհակառակը՝ պակասում են մշակող ձեռքեր։ Դրանք իրար մէջ համաձայնութիւն են կայացնում. մէկը միւսին վճարելով գիւղացիների պարտքը՝ նրանց տեղափոխում է իր կալուածքը (ռուսերէն «своз крестьянъ»)։ Աւելի խիզախ կամ՝ կուզէք՝ աւազակաբարոյ հողա-

տէրերը դրդում էին գիւղացիներին փախչել նախկին տեղից և իրանց մօտ հաստատուել, մի հանգամանք՝ որ շատ անգամ մարդասպանութեամբ էր վերջանում։

Ի հարկէ այդ տեղափոխութիւնը էլ աւելի վատթարացնում էր գիւղացու դրութիւնը. չէ՞ որ նրա պարտքը տուող հողատէրը հաշւում էր իր փողի սարսափելի տոկոսները և աւելի խճճում նրա դրութիւնը. փոխվում էին նախկին ազատ կապալառու գիւղացու և հողատիրոջ յարաբերութիւնները։ Գիւղացին դառնում էր холопъ—ղուլ, կոտր ընկած մարդ, որ այն ժամանակուայ օրէնքով «հլու», առանց սեպհական կամքի ծառայ էր պարտատիրոջ ձեռքին։ Բայց холопъ-ղուլը, ըստ նոյն օրէնքի, հարկ չէր տալիս։ Ուրեմն холопъ-ների բազմանալը ձեռնտու չէր գանձարանին։ Եւ մենք տեսնում ենք պատմութիւնից, որ պետութիւնը սկսում է խառնուել գիւղացիների և հողատէրերի յարաբերութեանց մէջ։

Յիշատակենք մի քանիսը։

Սովորաբար գիւղացիների գաղթը մէկ հողատէրից միւսի հողը՝ կատարվում էր աշնանը կամ վաղ գարնանը, յաճախ հունձը վերջանալուց յետոյ, որ ընկնում էր նոյեմբերին, ռուսերի սուրբ Իւրիյի տօնին («Юрьевъ день»), նոյեմբերի 26-ին։ Այդ միջոցը ունէր իր պարզ առաւելութիւնը, որ աւելորդ է բացատրել։ Եւ ահա օրէնքը որոշում է, որ գաղթը միայն այդ ժամանակ լինի։ Օրէնքը սկսում է որոշել և տուրքի սահմանը՝ գէթ այն մասով, թէ որքան պիտի տայ գիւղացին հողատիրոջը սերմի, անասունների համար, որ նա սովորաբար ստանում էր։

Որոշվում է և գանձարանին հասանելիք բաժինը, հարկը, որ անպատճառ պիտի հատուցուէր, երբ գիւղացիները գաղթում էին։

Վերջապէս օրէնքը արգելում էր վերոյիշեալ պատճառով холопъ դառնալը, որ ի հարկէ իրական կեանքում անկատար էր մնում։ Ահա այն բոլոր հանգամանքները—և՛ տնտեսական, և՛ պետական-օրինական — որոնք գիւղացուն դրին հողատիրոջ կամքի տակ։ Այլ ևս կամաւոր գաղթը անհնարին էր դառնում և մնում էր մի ելք, այն է՝ փախչելը։

Այդ փախուստը սաստկանում է XVI դարի վերջին, երբ շնորհիւ Իվան Ահարկուի վարած պատերազմների՝ հարկատուութեան պայմանները աւելի դժուարանում են, իսկ միւս կողմից Սիբիրի գրաւումը Երմակի ձեռքով բացում է փախուստի ապահով երկիր, ուր այնքան էլ հեշտ չէր հասնում կառավարութեան պատժիչ ոյժը։

Կառավարութիւնը այդ փախուստի դէմ սկսում է հրովարտակներ արձակել մէկը միւսի ետևից։

Առաջին հրովարտակը կրում է 1597-ի տարեթիւը։ Այդ հիման վրայ՝ այն գիւղացիները, որոնք փախել էին հրովարտակի հրատարակուելուց 5 տարի առաջ, ազատ էին թողնվում բնակութիւն հաստատած տեղերում, իսկ 5 տարուց պակասները՝ պիտի վերադառնային նախկին տէրերի մօտ։ 1601 թուին Բորիս Գոդունով թագաւորը մի այլ հրովարտակ է արձակում, որ յօգուտ մանր հողատէրերի էր, քանի որ սրանք էին կազմում զօրքերի մեծամասնութիւնը։ Հրովարտակը գիւղացիների գաղթեցնելը թոյլատրում էր մանր հողատէրերին, որպէս զի դրանք չմնան առանց մշակող ձեռքերի։

Ի՞նչ էր վերջ ի վերջոյ ներկայացնում ռուս գիւղացին 16-րդ դարի վերջալոյսին։ Օրէնքով նա դեռ նկատւում էր որպէս ազատ կապալառու, իսկ իրապէս նա ղուլ, холопъ էր, պինդ կպած իր մշակած հողին, առանց կարողանալու գաղթել աւելի ազատ տեղ, մի իրաւունք՝ որ նրան դեռ տալիս էր օրէնքը։ Այդ ժամանակից է մնացել «Вотъ тебѣ бабушка и Юрьевъ день!» դարձուածքը, երբ մէկը պատահում է անակնկալի։ Գիւղացու համար այլ ևս չկար Юрьевъ օրուայ ազատ գաղթը...։

---

II

XVII դարի սկզբի 13 տարին՝ մինչև այժմ թագաւորող Ռոմանովեան հարստութեան ծագումը՝ յայտնի է ռուս պատմութեան մէջ «խառնակ ժամանակ» (смутное время) անունով։

Վերջացել էր Մոսկվայի թագաւորութեան հիմնադիրների տոհմը Իվան Ահարկուի որդի Ֆէօդորի մահով. գահընկէց էին եղած Բորիս Գոդունովի ժառանգը, Դմիտրի Ինքնակոչը, Շույսկին և այլն, և երկիրը մնացել էր առանց թագաւորի, իսկ պետութիւնը հեծում էր լեհացիների ձեռքին։ Պետութեան վիճակը տնօրինողը ժողովուրդն էր, որ՝ բաժան-բաժան եղած կռւում էր իրար և արտաքին թշնամու դէմ։ Այդպէս չէր առաջ, երբ բօյարը թագաւորի դումայում կամ նստած վճռում էր նրա հետ պետական գործերը և կամ կառավարում էր փոխարքայութիւններ. ազնուականները ծառայում էին՝ի տրիտուր ստանալով պետական հողեր, իսկ գիւղացիները կամ հողեր մշակում, կամ զօրքերում ծառայում և դրա փոխարէն ստանում

սակաւ հող։ «Խառնակ ժամանակը» ամեն ինչ տակն ու վրայ արեց։

Դեռ Նախորդ շրջանում, Իվան Ահարկուի ժամանակ, պետութիւնը խիստ քայքայուած էր շնորհիւ պատերազմների։ Խառնակ ժամանակը այդ քայքայումը աւելի ևս առաջ տարաւ։ Այժմ ազնուականը ձգտում էր գիւղացուն холопъ դարձնելու. իր մօտ հաստատուող գիւղացիներից նա թուղթ էր վերցնում, որպէսզի յաւիտեան մնան իր հողի վրայ. գիւղացիք էլ համաձայնում էին՝ անճարութիւնից։ Կարիքը սարսափելի չափերի էր հասնում։ Սովի ժամանակ տասն-հազարաւոր դիակներ սփռուած էին երկրի մէջ, նրանց թաղող չկար։ Սովից ուտում էին մարդկային միս։ Անթիւ էր холопъ-ութիւն ցանկացող գիւղացիների թիւը. միայն թէ գտնուէր մէկը, որ նրանց չոր հաց տար ու սովից ազատէր։ Շատ տէրեր հրաժարվում էին իրանց գիւղացիներից՝ միայն թէ սով տարին նրանց չկերակրեն։ Ճանապարհները լիքն էին աւազակներով, ծայրագաւառները՝ առաւել Դոնի շրջանը՝ լիքը փախստականներով, որոնք իւրացրել էին ազատական կօզակ կոչումը՝ որպէս ազատ մարդիկ։ Եւ ահա՝ երբ հասաւ խառնակ շրջանը, Դոնի այդ փախստականները՝ ձի հեծած՝ յարձակվում էին իրանց նախկին հայրենիքի վրայ և առնում էին անցեալի վրէժը՝ սարսափելի կոտորածով, թալանով։ Ընկճուած գիւղացին էլ իր մահակով ու կեռով ոտի կանգնեց իր հարստահարողների դէմ։ Անգամ թշնամի լեհացիները սարսափում էին, թէ ինչպէս ռուսը իր եղբօրից սոսկալի վրէժ էր առնում։

Վերջապէս անցաւ անիծեալ տարեթիւը՝ лихолѣтie-ն, խաղաղուեց երկիրը և գահի հրաւիրուեց սահմանափակ իրաւունքով (земскій соборъ) Ռոմանովեան տան ժառանգ Միխայիլ Ֆեօդորովիչը՝ տակաւին շատ երիտասարդ, գրեթէ պատանի հասակում։

Քարուքանդ էր երկիրը. քաղաքները անմարդաբնակ, գիւղերը՝ երեսի թողնուած։

Դժուար էր և պաշտօնի պարտաւորուած ազնուականութեան դրութիւնը. չէ՞ որ նա էլ կերակրուելու համար պէտք ունէր մշակող ձեռքերի. իսկ սրանք մեծ մասամբ փախուստի մէջ էին։ Եւ ահա ազնուականները, նամանաւանդ սակաւ հողատէրերը, այսինքն մեծամասնութիւնը, խնդրում են կառավարութիւնից փոխել հին օրէնքը, որով 5 տարուց աւել փախածները ազատ էին համարվում. դէթ այդ միջոցը երկարացուէր մինչև 10 տարին, որպէսզի նրանք կարողանային յետ դարձնել իրանց հողերը մշակողներին։ 1647 թուին օրէնք է

հրատարակվում այդ 10-ամեայ միջոցը որոշող, իսկ դրանից յետոյ փախչողները պիտի վերադարձուէին նախկին բնակած տեղերը՝ առանց ժամանակամիջոցի։ Պետրոս Մեծի հօր օրով, 1649 թուին, երբ կազմուեց ռուսաց դատաստանագիրքը, յայտնի Уложеніе-ն, բոլորովին որոշուեց գիւղացիների դրութիւնը. Նրանք ճանաչուեցին որպէս հողատէրերի սեպհականութիւն (крѣпость—ղաբալա)։ Օրէնքը սահմանեց, որ՝ ով մինչև 1625 թիւը եղել է յայտնի հողի վրայ, այնուհետև էլ պիտի այդտեղ բնակուի իր ընտանիքով, օջախով։ Փախչելու համար էլ միջոց չէր սահմանվում. փախստականը պիտի վերադարձուի իր տիրոջը։ Իսկ այն հողատէրը, ով ապաստան կը տար փախստականին, ենթարկվում էր տուգանքի։ Արգելվում էր և գաղթեցնելը։ Բայց Уложеніе-ն չէր ասում, թէ գիւղացին ազատ մարդ չէ այլ ևս. ընդհակառակը՝ նա արգելում էր холопъ-ութիւնը, և այն գիւղացին, որ ստրուկ էր գրվում, աքսորվում էր Սիբիր։ Հողատէրը իրաւունք չունէր նոյն իսկ իր կալուածքների շրջանում մէկ տեղից միւսը գաղթեցնել գիւղացիներին, կամ իր տանը վերցնել նրանց՝ անձնական ծառայութեան համար։ Մի խօսքով՝ օրէնքը հողատիրոջ համար ապահովում էր բանող ձեռքեր... Սակաւ դէպքերում օրէնքը թոյլատրում էր բացառութիւններ. երբ հողատէրը զրկվում էր շէն կալուածքից, և մնում էր նրա ձեռքին միայն ազատ հող, այն ժամանակ նա իրաւունք ունէր նախկին կալուածքից գիւղացիներ գաղթեցնել։ Կամ երբ հողատէրը սպանում էր հարևան ազնուականի գիւղացուն, փոխարէնը պիտի տար նրան իր գիւղացիներից։

Օրէնքի շեղումները կառավարութիւնը թոյլ էր տալիս, որովհետև ազնուականներն էին նրա նեցուկը. նրանք էին զինուորական ոյժը, որ այն ժամանակ նամանաւանդ՝ մեծ նշանակութիւն ունէր։ Եւ պետութիւնը, աչքի առաջ ունենալով իր գանձարանի շահը, աւելի սկսեց պնդացնել կախման շղթան։ Նա գիւղացու բաժին հարկը սկսեց պահանջել հողատէրից. պարզ է, որ հողատիրոջ էլ պէտք էր զինել նոր իրաւունքներով՝ գիւղացիների նկատմամբ. նա ստանում է դատաստանական-ոստիկանական իրաւունքներ գիւղացու վերաբերեալ։ Այնպէս որ, ինչպէս ռուս պատմագիրն է ասում, «XVII դարի համար մի քիչ ամօթ է ասել՝ թէ ռուս գիւղացին ազատ մարդ էր»։

Սկզբում քօղարկուած, ապա բոլորովին յայտնաբար՝ հողատէրը գիւղացու հետ վարվում է ինչպէս մի իրի հետ. նրան ծախում է, իբրև օժիտ է տալիս իր աղջկան, տիրանում է նրա մարմնի և հոգու վրայ, ծեծում է, շղթայակապ անում նրան և

*անգամ անպատիժ սպանում նրան։* Уложеніе-*ն չէր նախատեսել գիւղացու և հողատիրոջ յարաբերութեանց սահմանները. դա կարգաւորվում էր* ադաթով, *որը վերջ ի վերջոյ պիտի դառնար հզօրի կամայականութիւնը, ինչպէս և եղաւ։*

*1690 թուի հրովարտակը՝ մոռանալով որ գիւղացին ըստ օրէնի ազատ է՝ թոյլատրում է նրանց փոխել կալուածատէրերի միջև՝ սրանց համաձայնութեամբ։ Իսկ փոխելուց դէպի վաճառքը չէ՞ որ մի քայլ էր։*

*Գիւղացիների այդ սարսափելի դրութիւնը սնուցանում է այն յիշատակելի «բունթերը», խռովութիւնները, որոնցով հարուստ են 17-րդ և 18-րդ դարերը, խռովութիւններ՝ որոնք չը դադարեցին և 19-րդ դարում, չնայած որ կառավարութիւնը արդէն ունէր լաւ կազմակերպուած ոստիկանական-զինուորական ոյժ։ Երկար կը լինէր պատմել այդ բունթերի մասին. բաւական է յիշել և մինչև այժմ ժողովրդական յիշողութեան մէջ կենդանի Ստենկա Ռազինի և Պուգաչեվ Եմելիանի յարուցած մեծ բունթերը, որոնց նշանաբանն էր՝ «հող և ազատութիւն»։*

*Բացվում է* XVIII *դարը, Պետրոս Մեծի և Եկատերինէ* II-*ի «ոսկեդարը», և գիւղացու ըստ օրէնի անորոշ դրութիւնը կաղապարվում է մի ամուր շինուածքով. ահա իսկական* Крѣпостное право-*ն։*

---

# III

*Պետրոս Մեծը հրատարակում է մի հրովարտակ, որով արգելում է գիւղացիների վաճառքը, բայց նոյն հրովարտակում գրում է. «Եթէ իսպառ չէ կարելի վերացնել այս սովորութիւնը, գէթ պահանջել, որ մարդկանց ծախեն ամբողջ ընտանիքներով և ոչ թէ զատ-զատ, որ մի չտեսնուած բան է»։ Փողի պակասութիւնից դրդուած՝ Պետրոս Մեծը* холопъ-*ներին էլ դարձրեց հարկատու, իսկ իր անվերջ պատերազմների համար զինուոր ունենալու նպատակով՝ սրանց էլ ստիպեց ծառայել զօրքի շարքում։ Այսպէս՝* крестьянинъ-*ի և* холопъ-*ի իրաւունքները հաւասարուեցին և հողատէրը սկսեց կամայ թէ ակամայ սխալեցնել իր* холопъ-*ին իր գիւղացուց։*

*Եւ երբ մեծ ռեֆորմատորը հիմնեց մշտական կանոնաւոր*

զօրք ու հարկատու եղաւ դրա համար դրամական միջոց, նա հրամայեց ժողովրդագրութիւն կազմել, որպէս զի հարկերը թաշխուեն բոլոր հպատակների վրայ, ի հարկէ բացի ազնուականներից և հոգևորականներից. դարձեալ այս օրէնքով холопъ-ը և գիւղացին հաւասարուեցին իրանց իրաւունքների մէջ...հարկ տալու գործում։

Մենք տեսանք, որ հարկը տալիս էին մշակուող հողից. երբ գիւղացիները ուժասպառ եղան ու սկսեցին վարելահողերը պակասեցնել, կառավարութիւնն էլ հարկը վերածեց ծուխի։

Գիւղացիները սկսեցին մեծ ծուխերով ապրել, որ յիշեցնում էր բազմանդամ հայ ծուխը, մինչև այժմս էլ գոյութիւն ունեցող մեր երկրի խուլ անկիւններում։ Այդ բանը նկատելով՝ ծխահարկը փոխեցին մարդաշնչի։ Բայց մարդաշունչը մտցնելով՝ ինքը կառավարութիւնը, այսպէս ասած, սկսեց նկատել գիւղացուն առանց հողի. և քանի որ հողատէրն էր ըստ առաջնոյն նրա դատաւորը, ոստիկանը, նա էր պատասխանատու մարդաշնչի համար (յիշեցէք „Мертвыя Души", թէ ինչպէս ուրախացաւ Պլիւշկինը Չիչիկովի առաջարկին՝ գնել մեռած ոգիները, որոնց հարկը ծանրացած էր Պլիւշկինի վրայ), ապա մեծացրին և նրա իրաւունքները ևս առաւել։ Մռայլ գոյներով է նկարագրում Պետրոս Մեծի ժամանակակից յայտնի Իվան Պոսօշկովը — ռուսաց այդ Ադամ Սմիտը — գիւղացի-ճորտերի դրութիւնը. «Կարիքը ստիպում է գիւղացիներին փախչել. Նրանցից ոմանք հաստատվում են Վօլգայի ափերին, ոմանք ապաստանում են Ուկրայնայում, ոմանք՝ սահմանից դուրս։ Այդպիսով՝ նրանք շէն են դարձնում օտար երկիրներ, իսկ մեր հայրենիքը ամայանում է։ Դառն խօսքերով և սակայն անօգուտ՝ աղերսում են գիւղացիները մեծ կայսրին. «Մեր քաշած տանջանքները Սօդօմ-Գօմօրում չեն կրել. քո բօյարները, իշխանները մեզ յօշոտում են՝ ինչպէս առիւծներ, կոխորդում թունաւոր օձերի նման, թափվում մեզ վրայ կատաղի գայլերի պէս, ծեծում են մեզ այդ անողորմ Պիղատոսները։ Ողձա՛, ողորմիր մեզ, մեր հա՛յր թագաւոր»։

Բայց ո՞ւմ դէմ էր այդ բողոքը. այն ազնուականնների՞ դէմ, որոնք կազմում էին տէրութեան սիւնը, նրա զօրքը, նրա հրամանատարները, նրա կառավարիչները, մինիստրները։ «Ճորտատիրութիւնը» գնալով աւելի կատարեալ է դառնում. Պետրոս Մեծից յետոյ՝ 1730 թուին՝ ազնուականների ձեռքի տակ գիւղացիները զրկվում են անշարժ կալուածքներ գնելու իրաւունքից. 1741 թուին նրանցից այլ ևս հպատակութեան երդումն չէ պա-

հանջվում. 1761 թուին նրանց արգելվում է պետական կապալներ, подрядъ-ներ վերցնելը, մուրհակով պարտ վերցնելը։ Միւս կողմից՝ 1747 թուին հողատէրերին իրաւունք է տրվում վաճառել գիւղացիներին՝ զինուոր տալու համար, 1760 թուին ազնըւականը իրաւունք է ստանում իր գիւղացուն Սիբիր տաժանակիր աշխատանքի ուղարկելու. վերջապէս 1746 թուին արգելվում է ոչ-ազնուականներին ունենալ ճորտեր։

Երբ գահ է բարձրանում Եկատերինէ Մեծը, էնցիկլոպեդիստ փիլիսոփաների այդ խոնարհ աշակերտուհին, Դերժավինի գովաբանած իմաստուն Ֆելիցան, «ճորտատիրութիւնը հասնում է» իր գագաթնակէտին, աւելանում են և ազնուականների արտօնութիւնները։

Մինչև Եկատերինէն իսկապէս բոլորն էլ ճորտեր էին՝ և՛ ազնուականները, և՛ գիւղացի-ճորտերը... տէրութեան առաջ։ Ազնուականները պատժի սպառնալիքի տակ պարտաւոր էին ծառայել տէրութեանը, որի փոխարէն և տրուել էին նրանց գիւղացիներ։ Եկատերինէն, որ գահ էր բարձրացել ազնուականների շնորհիւ, ազատեց նրանց այդ պարտադիր ծառայութիւնից... սակայն մոռացաւ յետ վերցնել գիւղացիներին։ Առաւել նա բազմացրեց իր պարգևներով ճորտերի թիւը, բախշելով իր սիրած պալատականներին արքունի գիւղացիներ՝ որպէս ճորտեր։

Յայտնի պատմաբան Վասիլ Սիմեվսկին հաշուել է, որ իր սիրեցեալներին Եկատերինէն գահ նստելուն պէս առաջին ամսուայ ընթացքում բաժանել է 18 հազար արքունի գիւղացիներ, դարձնելով նրանց ճորտեր, իսկ իր երկար թագաւորութեան միջոցին ընծայած ճորտերի թիւը մի միլիոնի է հասնում... Պաւէլ I, Եկատերինէի որդին, իր թագադրութեան օրը բաժանեց 100 միլիոն դեսեատին հող և 100,000 հոգի... Այդ ընծայաբերութիւնները շարունակվում էին և յետոյ, թէև ոչ այդքան մեծ չափերով։

Այժմ հողատէր ազնուականը ճորտի տէրն ու տիրականն է. նա հետևում է նրա իւրաքանչիւր քայլին և նրա վիճակը, բաղդը կարգադրում ըստ իր հաճոյքի։ Ես բերեմ մի քանի յայտարարութիւններ 1797 թուի «Москов. Вѣд.»-ից։

«Ծախվում է մի լակէյ 25 տարեկան, իր կնոջով և երեխայով. լաւ ջուլհակ է նոյնպէս, գիտէ ածիլել և արիւն բաց թողել. կինը կարող է լաւ ադախին լինել։ Նոյն տեղը ծախվում է մի լաւ ֆայտոն։ Ցանկացողները թող դիմեն այս-ինչ հասցէով»։

«Ծախվում է 17 տարեկան աղայ. տեսնել կարելի է և

գնի մասին համաձայնուել այս-ինչ տեղը»։

«Մի ընտանիք—տղամարդը դերձակ՝ 45 տարեկան, կինը լուացարար՝ 30 տարեկան, աղջիկը՝ 18 տարեկան՝ լաւ կրուժե-վա անող, և 5 տարեկան մի տղայ—ծախվում է 600 րուբլով։ Դիմել այս-ինչ տեղ»։

«Ծախվում է տղամարդկանց և կանանց պարիկմախեր, բարձրահասակ և լաւ տեսքով, կարող է լինել կամերդիներ, լակէյ, սեղանապետ. 27 տարեկան։ Նրա կինը, 24 տարեկան, սիրունատես, 3 տարեկան զաւակով։ Վերջին գինն է 1000 ր.»։

«Ծախում են՝ 2 դերձակ, մի կօշկակար, մի ժամագործ, խոհարար, կարէտ շինող, փորագրիչ, երկու կառապան։ Նոյն տեղը ծախվում են 3 ջահել ձի, մի քանի Թազիներ։ Դիմել այս-ինչ տեղ»։

«Ծախվում է մի աղջիկ, որ լաւ քարգահ է անում։ Նոյն տեղը ծախվում են ադամանդազարդ իրեղէններ»։

Եւ այլն և այլն...

Երբեմնի ազատ գիւղացուն այժմ ազնուականը դարձնում է իր բակի սպասաւոր, նրանից կազմում իր ДВОРНЯ-ն, որ երբեմն հասնում էր մի քանի հարիւր հոգու. անգամ կային баринъ-ներ, որոնք ունէին 1000-ից աւել՝ դռան ծառայողներ... Գիւղացու աղջիկները տիրուհու համար կրուժեվաներ էին անում, քաթանեղէն գործում, իսկ ազատ ժամանակը զուարճացնում баринъ-ին կամ նրա դեռահաս ժառանգին։ Այն դվօրօվօյին, որը շնորհք էր ցոյց տալիս, սովորեցնում էին արհեստներ, գիտութիւններ, և նա դառնում էր տիրոջ նկարիչը, ճարտարապետը, դերասանը և այլն։ Հասկանալի է, թէ որքան ողբերգական էր ճորտ ինտելիգենտի դրութիւնը։ Մեծամասնութիւնը վերջացնում էր իր կեանքը ինքնասպանութեամբ կամ արբեցողութեամբ։

Ռուսաստանը այս օրերս տօնեց մալօրօս մեծ բանաստեղծ Շեվչենկօյի մահուան 50-ամեակը, որ նոյնպէս ճորտ էր և որին ազատելու համար հարկաւոր եղաւ պալատական բանաստեղծ Ժուկօվսկիի միջամտութիւնը...

Ճորտութիւնը դառնում է այն պատուանդանը, որի վրայ կառուցվում է Եկատերինէի և նրա յետնորդների շրջանի շլացուցիչ փարթամութիւնը, որի նկարագրելը կը պահանջէր մի քանի տասնեակ հատորներ։ Այժմեան Տաւրիկեան պալատում, որ Եկատերինէն նուիրել էր իր սիրական Պատեօմկինին, վերջինս ցանկացաւ խնջոյք սարքել. խնջոյքին պիտի այցելէր ինքը կայսրուհին։ Ամառ էր, իսկ կայսրուհին ցանկացել էր

սահնակով գալ։ Եւ անձ պալատից մինչև Տաւրիկեան պալատը Պոտեոմկինի հրամանով աւազ է փռվում, և կայսրուհին իսկ որ սահնակով է գալիս։ Այդ բալի լուսաւորութիւնը միայն նստում է 70,000 ռուբլի... Եւ ինչ զարմանք, թէ Պոտեոմկինի ականակուռ մունդիրը արժէր մէկ միլիոն ռուբլուց աւել։

Անշուշտ ճորտատէրերը մէկ-մէկ աւազակներ չէին հռչակաւոր Սալտիպխայի նման, կամ այն ազնուականի նման, որ գիղջկուհիներին հրամայում էր անուցանել իրանց կաթով իր թազիներին․ բայց մի՞թէ «Մումուի» մէջ նկարագրուած մեծ տիրուհին քիչ էր դժբախտացնում իր ճորտին։

Ճորտերի սրտում միշտ վառ էր այն միտքը, որ իրանց չարչարողները ազնուականներն են հակառակ Թագաւորի կամքին, որ նա հրամայել է ազատել իրանց․ միայն թէ ազատութեան ոսկէ հրովարտակը գողացել են և պահվում է ազնուականների մօտ։ Այդ հաւատը կենդանի էր և այն ժամանակ, երբ եկեղեցիներում կարդացվում էր բարձրագոյն հրովարտակը (XVIII դարում), որով տաժանակիր աշխատանքներ էր սպառնում նըրանց, որոնք կը համարձակուեն գանգատ բերել իրանց տիրոջ վրայ։

---

## IV

Ճորտատիրութեան ծաղկման դարն եղաւ և նրա անկման առաջին յայտարարը։ Որքան էլ պոմէշչիկները գոհ լինէին և յղփանային, բայց ճորտութիւնը իր հակացոյց, թարս երեսով ծանրանում էր ոչ միայն գիւղացիների, այլ և ամբողջ ռուսական կեանքի վրայ, նոյն իսկ իրանց պոմէշչիկների, կալուածատէրերի վրայ։ Ռուսաստանը ամեն բանի մէջ յետ էր մնացել միւս պետութիւններից։ Ռուսաստանում գրագէտների և կրթեալ մարդկանց թիւը շատ քիչ էր․ շատ քիչ էր արհեստ իմացողների թիւը․ չկային ֆաբրիկաներ, գործարաններ։ Եւ դրա պատճառը շատ հասկանալի էր։ Ո՞վ պէտք է զբաղուէր արհեստներով և գիտութիւններով։ Գիւղացիները ճնշուած, ճզմուած էին աշխատութեան ներքոյ և ոչ մի իրաւունք չունէին․ հետևաբար՝ ինչ սիրտ էր մնում նրանց մէջ զբաղուելու արհեստներով և գիտութեամբ․ հողատէրերը այնպէս ընտելացած էին պարապու-

թեան, որ ընդունակ չէին ոչ մի գործի։ Զէ՞ որ մանկութիւնից նրանց սովորեցնում էին, թէ չպէտք է ոչ մի բանի ձեռք տալ, չպէտք է աշխատել. ամեն բան նրանց համար անում էին ծառաները. բարինը կամ աղան չէր կարողանում ինքը լուացուել, չէր կարողանում գետնից վերցնել նոյն իսկ իր ընկած թաշկինակը, չէր կարողանում ինքը ոչ հագնել և ոչ էլ հանել շորերը և առհասարակ չէր կարողանում առանց սպասաւորի որևէ մի քայլ անել. այդպիսի մարդը կարո՞ղ էր աշխատաւոր լինել։

Այնու ամենայնիւ դրացի երկիրների կեանքը գործում էր իր ազդեցութիւնը Ռուսաստանի վրայ և ինքը կեանքը խօսում էր ընդդէմ ճորտական իրաւունքի։ Եւրոպայից սկսեցին բերել այնտեղի ֆաբրիկաներում և գործարաններում պատրաստուած իրեր, որոնք չտեսնուած նորութիւն էին ռուսների համար։ Իրանք ռուսները սկսեցին գնալ Եւրոպա, ապրել այնտեղ և վերադառնալով պատմել, թէ ինչպէս են ապրում արտասահմանում մարդիկ։ Քիչ-քիչ կեանքը սկսեց փոխուել. ուսեալ մարդկանց թիւը աւելացաւ, սկսեցին հիմնուել ֆաբրիկաներ, գործարաններ. բայց ֆաբրիկային արտադրութիւնը Ռուսաստանում չէր կարող լայն ծաւալ ստանալ, քանի որ գոյութիւն ունէր ճորտութիւնը, որովհետև աշխատողներ, բանուորներ չկային։ Ռուսաստանում չորս մարդուց մինը ճորտ էր. պոմեշչիկները ուղարկում էին իրանց ճորտերին աշխատելու ֆաբրիկաներում և իրանք էին վերցնում նրանց վաստակը. բայց մի՞թէ տանջուած, հիւծուած մարդիկ կարող էին աշխատել, այն ևս ոչ իրանց համար, երբ միւս կողմից էլ պէտք է մշակէին իրանց հողերը։ Ապա գրագէտ մարդկանց պակասութիւնը սաստիկ զգալի էր լինում։ Պոմեշչիկները գրագիտութիւն չէին սովորեցնում իրանց ճորտերին. գիւղերում դպրոցներ չկային. միայն, իբրև բացառութիւն, մի քանի բարի պոմեշչիկներ դպրոց էին պահում իրանց գիւղում։ Այդպիսի խորին և թանձր տգիտութեան մէջ ապրել այլ ևս անհնարին էր։

Բոլոր կրթուած, ազնիւ և լաւագոյն մարդիկ Ռուսաստանում վաղուց բողոք էին բարձրացրել ճորտութեան դէմ. XVIII դարի վերջի և XIX դարի սկզբի բոլոր ռուս գրողները սկսել էին ճորտութեան դէմ խօսել իրանց գրքերի մէջ և ապացուցանել, թէ պէտք է ոչնչացնել ճորտութիւնը։ Այդ գրողների մէջ առաջին տեղն է բռնում Եկատերինէ II կայսրուհու թագաւորութեան ժամանակ ռուս գրող Ալէքսանդր Նիկոլայեվիչ Ռադիշչեվ, որ իր «Ուղեւորութիւն Պետերբուրգից Մոսկվա» աշ-



**Ա. Ն. Ռադիշչեվ**
*(1749—1802)*

*խատութեան մէջ վառ գոյներով պատկերացրեց ճորտերի զարհուրելի դրութիւնը և շատ պարզ կերպով շօշափեց այն միտքը, թէ ռուս ստրուկները պէտք է դառնան ազատ քաղաքացիներ, և ազատուած գիւղացին պէտք է դառնայ իր մշակած հողի սեպհականատէրը։*

*Բացի Ռադիշչեվից, Եկատերինէ II-ի թագաւորութեան ժամանակ, մի այլ գրող և հասարական գործիչ՝ Նիկ. Իվ. Նովիկով (1744—1818), մի ազնիւ, մաքուր և բռնկուող հոգի, իր խմբով հանդէս եկաւ ճորտութեան դէմ։ Դարձեալ այդ ժամանակ ռուս գրող Ֆօնվիզինը իր նշանաւոր «Недоросль» կոմեդիայով, ուր նկարագրուած է ճորտական իրաւունքը և կենցաղը, հարուածեց այդ իրաւունքը, նկարագրելով ճորտութիւնը ծաղրական և այլանդակ կերպարանքով և դրանով ցոյց տալով նրա վնասակարութիւնը։*

*Դժբախտաբար վրայ հասաւ ֆրանսիական մեծ յեղափոխութիւնը, որ սաստիկ վախեցրեց Եկատերինէ II-ին, և Ռադիշչեվ ու Նովիկով՝ և սրանց համախոհները իրանց քարոզչութեան համար բանտարկուեցին և աքսորուեցին. լռեց և գրականութիւնը։*

*Պաւլ I կայսրի ժամանակը, ի հարկէ, չէր կարող նպաստել ազատագրական շարժմանը, բայց նրա յաջորդ Ալէքսանդր I կայսրի օրով մի քանի փորձեր եղան՝ թշուառ ճորտերի վիճակը թեթևացնելու, ուստի և յոյսերը վերակենդանացան։ Կայսր Ալէքսանդր I ճորտութեան իրաւունքի մասին ասաց. «Ես ուխտ եմ արել չաւելացնել այդ թշուառների թիւը և կանոն եմ դրել ինձ համար ոչ ոքի սեպհականութիւն չտալ գիւղացիներին»։*

*Նա 1801 թուին թոյլատրեց բոլոր դասակարգերին (ուրեմն և գիւղացիներին, ճորտերին) ձեռք բերել հողային սեպհականութիւն։ Կոմս Պ. Դ. Կիսելեվի ազդեցութեան ներքոյ, Ալէքսանդր I-ը 1813 թ. հրատարակեց «ազատ հողագործների օրէնքը», որի զօրութեամբ թոյլատրվում էր ազատել գիւղացի-*

ներին։ Սակայն գիւղացիներին ազատել ցանկացողների թիւը շատ քիչ եղաւ. կային ցանկացողներ՝ ազատելու ճորտերին առանց հողի, իսկ առանց հողի ազատել ճորտերին՝ կը նշանակէր մատնել նրանց սովամահ լինելու։

Թէ Ալէքսանդր I-ի օրով և թէ նրա մահից յետոյ՝ Նիկօլայ ]կայսրի թագաւորութեան սկզբում ազատասէր երիտասարդութիւնը շատացաւ. այդ բանին շատ նպաստեցին և Նապօլէօնեան պատերազմները, երբ բազմաթիւ ռուս երիտասարդ ազնուական սպաներ Եւրօպա գնալով՝ իւրացրին եւրօպական ազատ մտածողութիւնը։ Այդ երիտասարդները, վերադառնալով հայրենիք, կազմեցին դեկտեմբերեան կամ դեկաբրիստ կոչուած խումբը, որ առաջ բերեց 1825 թ. դեկտ. 14-ի շարժումը, որի նպատակն էր փոխել Ռուսաստանում միահեծան կառավարութիւնը և ազատել գիւղացիներին ճորտութիւնից։



Պաւլ Իվ. Պեստել
(1792—1826)



Իվ. Դ. Եակուշկին
(1797—1857)

Դեկաբրիստների մեծ մասը (Պ. Իվ. Պեստել, Բեստուժեվ-Ռիւմին, Ռիլէեվ, Եակուշկին և այլք) սերում էին հարուստ զինուորական երիտասարդութիւնից. նրանք անձնապէս իրանց համար ոչ մի շահի չէին ձգտում, այլ նրանց ոգևորողն էր հայրենիքին ծառայելու վեհ գաղափարը։ Այդ խումբը իր այդ վեհ գաղափարների համար հալածուեց, աքսորուեց և նոյն իսկ մահուան դատապարտուեց։ Բայց դեկաբրիստների ազդեցութիւնը այնքան մեծ եղաւ ռուս հասարակութեան վրայ թէ այն ժամանակ և թէ ապա, նրանց մահից յետոյ, որ նրանց գաղափար-

ներն անցան սերնդից սերունդ։

Դեկտեմբերի 14-ի անցքը, ապա 1830 թ. լեհական շարժումը աւելի ուժեղացրին ռէակցիան, և ազատասէր գրողները ենթարկուեցին հալածանքի, աքսորի ու բանտարկութեան։ Գրիբոյեդովի «Խելքից պատուհաս» կոմէդիան միայն ձեռագրերով էր շրջանառութիւն անում Ռուսաստանում։

Սակայն կեանքը և նրա արտայայտիչ գրականութիւնը առաջ էր տանում իր արշաւանքը։ Դեկաբրիստներից յետոյ հանդէս եկաւ արևմտականների („западники") խումբը, որին պատկանում էին Վ. Բելինսկին, Տ. Գրանովսկին, Ալ. Հերցէնը և այլք։ Արևմտականներին անմիջապէս յարում էր և Պետրաշևսկիի ազատագրական խումբը, որ ապրում էր XIX դարի 40-ական թուականներին։



Ալէքսանդր Հերցէն
(1812—1870)



Մ. Վ. Պետրաշեվսկի
(1819—1867)

Արևմտականների հետ միասին ճորտութեան դէմ դուրս եկաւ և ռուս մտքի մի այլ բանակը, սլավեանոֆիլների բանակը, որ թէև պաշտպանում էր ռուսական կեանքի հիմունքի ինքնուրոյնութիւնը և զգուշացնում էր ռուս ժողովուրդը եւրոպական կուլտուրայի հիմունքը իւրացնելուց, բայց նա ևս ընդդէմ էր ճորտութեան։ Իսկ արևմտականները, ապացուցանելով որ անհրաժեշտ է Ռուսաստանին իւրացնել եւրոպական կուլտուրայի կանոնները, ցոյց էին տալիս, որ պէտք է ամենից առաջ ջնջել ճորտութիւնը, իբրև մի պայման՝ առանց որի անհնարին է Ռուսաստանի կուլտուրական մերձեցումը Եւրոպայի հետ։

Նոյնը քարոզում էին և «պետրաշեվցիները», այն է՝ Պետրաշևսկի-Բուտաշևիչի խմբի անդամները. ուրբաթ օրերը հաւաքվում էին Պետրաշևսկիի տանը երիտասարդ, կրթեալ, ընթերցասէր, մտածող մարդիկ և քննադատում, խօսում. ամեն մի անարդարութիւն, զեղծումն, ճնշումն և բռնութիւն խորապէս յուզում էր ամեն մէկի հոգին, իսկ ամէն մի ձգտումն դէպի հասարակական բարիքը՝ համակրութիւն էր առաջ բերում նրանց մէջ։ Եւ որպիսի հետաքրքրութեամբ նրանք հետևում էին և Արևմուտքում կատարուող դէպքերին։ Եւ, ի հարկէ, այդ խմբի մէջ ամենակենդանի արձագանք էին գտնում ճորտութեան սարսափները և ժողովրդական կարիքը։

Նոյնպիսի ազատագրական բնաւորութիւն էր կրում և Ալէքսանդր Հերցէնի կամ Իսկանդէրի գրական ամբողջ գործունէութիւնը։ Դեռ երեխայ ժամանակ Հերցէնը իր հօր տան մէջ իմացաւ ճորտերի կեանքի գաղտնիքը. նա դեռ պատանի հասակից հասկացաւ, շփուելով ճորտ երեխաների հետ գիւղում, որ ըստրուկների կրծքում նս բաբախում է նոյն մարդկային սիրտը. Նրանց իրաւազուրկ գոյութեան զարհուրանքը խորապէս տպաւորուեց նրա զգայուն հոգու մէջ։ Եւ նա ուխտ արեց աշխատել այդ սոսկալի դրութեան ջնջման։ Եւ ահա մենք տեսնում ենք այդ տաղանդաւոր գրողին, որ իր ազատ մտքերի համար ստիպուած էր փախչել արտասահման և այդտեղ հրատարակում էր „Колоколь“ (Հնչակ) անունով մի ամսագիր։ Ամբողջ իր կեանքը նուիրած՝ ազատագրական գործին, նա իր հնչակով կոչ էր անում բոլոր զգայուն սրտերին՝ ջնջել ստրկութեան նախատինքը։

Բայց ճորտութեան ջնջման գլխաւոր սատարողները կամ գիւղացիական ազատագրութեան հոգևոր հայրերն եղան ռուսաց գրականութեան բոլոր դէմքերը XVIII և XIX դարերում՝ Ֆօնվիզին, Լերմօնտօվ, Պուշկին, Գօգօլ, Տուրգենեվ, Նեկրասօվ, Գօնչարօվ, Բելինսկի, Գրիգօրօվիչ, Դօբրօլիւբօվ և Չերնիշեվսկի։

Բոլոր այդ նշանաւոր գրողները, բանաստեղծները գրում էին ճորտական իրաւունքի մասին. Նրանք նկարագրում էին իրանց արտայայտութիւնների մէջ ճորտերին՝ ինչպէս իսկական մարդկանց, մի բան, որ շատ մեծ նշանակութիւն ունէր այն ժամանակուայ համար, որովհետև ճորտերին մարդ չէին համարում։ Նրանք պատկերացնում էին ճորտերի հոգին, նրանց զգացումները, մտքերը, ցանկութիւնները. Նկարագրում էին նրանց մէջ եղած համակրելի և բարի մարդկանց. և այդ արտադրութիւնների ընթերցողները կամայ ակամայ տոգորվում էին համակրութեամբ դէպի ճորտերը, ատելութեամբ՝ դէպի ճորտական

*խրատունքը և ցանկութեամբ՝ շուտով ջնջելու այդ ստրկութիւնը։ Պուշկինը գրում էր, որպէս թէ կոչ անելով Ցարին. «Արդեօք կը տեսնե՞մ երբևէ ժողովուրդը ազատուած և ստրկութիւնը՝ տապալուած Ցարի մի նշանով»։ Նեկրասովի բոլոր ոտանաւոր-*

**ԳԻՒՂԱՑԻՆԵՐԻ ԱԶԱՏՈՒԹԵԱՆ ՀՈԳԵՒՈՐ ՀԱՅՐԵՐԸ**



**Դենիս Իվ. Ֆոնվիզին**
*(1745—1792)*



**Միխ. Յու. Լերմոնտով**
*(1815 – 1841)*



**Ալ. Ս. Պուշկին**
*(1799—1837)*



**Նիկ. Վ. Գոգոլ**
*(1809—1852)*



**Իվ. Ս. Տուրգենեվ**
*(1818—1883)*



**Նիկ. Ա. Նեկրասով**
*(1821—1877)*



**Իվ. Ալ. Գոնչարով**
*(1814—1891)*



**Վիս. Գրիգ. Բելինսկի**
*(1810—1848)*

ները համակուած են խորին սիրով դէպի հարստահարուած ժողովուրդը. Նա ինքը մեծացած լինելով պոմէշչիկների շրջանում՝ ատում էր սրտանց նրանց կամայականութիւնը, ուստի և իր գեղեցիկ բանաստեղծութիւնների մէջ կոչ էր անում ուրիշներին ևս ատել այդ կազմը, ուր «ճնշուած և դողդոջուն ստրուկների

Դիմ. Վաս. Գրիգորովիչ
(1822—1899)

Նիկ. Ալ. Դոբրոլիւբով
(1836—1861)

ծրամը նախանձում էր աղայի վերջին շների կեանքին»։ Նեկրասովը կարողացաւ թափանցել մուժիկի կեանքի գրեթէ բոլոր խորշերը և նրա ոտանաւորների մէջ ցոլանում է «անյատակ վշտի վտակը, որ հոսում է ամբողջ ճորտական Ռուսաստանով»։ Մի ուրիշ գրող՝ Գրիգորովիչ, որ առաջինը խոշոր բելլետրիստ գեղարուեստագէտներից՝ շօշափեց գիւղացիական կենցաղը, ծանօթացրեց հասարակութեանը շինական և ճորտային կեանքի հետ իր «Գիւղ» (Деревня), «Անտոն վշտալին» (Антонъ Горемыка) և այլ վէպիկներով։

Բայց մանաւանդ մեծ է Տուրգենեվի մատուցած ծառայութիւնը ազատագրութեան գործին։ Նա իր «Որսորդի յիշատակագրեր» (Записки Охотника), «Մումու» (Муму) և այլ աշխատութիւններով վառ գոյներով նկարագրեց գիւղը, հասարակ ժողովուրդը և ցոյց տուեց, որ ճորտերը զգում են, տանջվում, սիրում, ատում նոյնպէս, երբեմն նոյն իսկ աւելի խորա-

Նիկ. Գաւր. Չերնիշեւսկի
(1828—1889)

պէս, քան աղաները. գիւղացիների հետ միասին նա նկարագրել է և պոմեշչիկներին՝ հողատէրերին, որոնք քէյֆ են անում, շուայտագեղխ և անառակ կեանք վարում և անընդունակ են որևէ աշխատութեան: Համեմատութիւնը ճորտերի և պոմեշչիկների միջև՝ փայլուն կերպով երևան է հանում ճորտական իրաւունքի բոլոր այլանդակութիւնը: Այդ գրուածքները խորունկ տպաւորութիւնը էին թողնում ընթերցողների վրայ, որոնց թւում գտնվում էր և ապագայ Ցարը, գահաժառանգ Ալէքսանդր Նիկոլայեվիչը:

Բելինսկին, 40-ական թուականների գրող-քննադատ, ինչպէս և Դոբրոլիւբովը իրանց ամբողջ կեանքը նուիրեցին կռուի ընդդէմ ճորտութեան, գրականութեան մէջ. նրանց համար գիւղացիների ազատագրութիւնը նուիրական ուխտ էր, որ նրանք մեռնելիս կտակեցին իրանց բարեկամներին գլուխ բերել:

Բոլոր այդ գրողները իրանց գրքերով արծարծում էին առաջաւոր և լաւագոյն մարդկանց մէջ ձգտումն՝ ազատելու հայրենիքը ստրկութեան շղթայից: Նրանց ջերմ, համոզուած խօսքերը, նրանց ստեղծած գեղարուեստական պատկերները զուր չէին անցնում, այլ ստիպում էին մտածել այդ հարցի մասին բոլոր նրանց, որոնց մէջ խղճմտանքը դեռ բոլորովին չէր թմրել: Այդ գրողների ազդեցութեան տակ նոյն իսկ կառավարող, բարձր շրջանները սկսեցին մի քանի պալիատիվ միջոցներ ձեռք առնել՝ ճորտերի դրութիւնը ամոքելու համար: Օրինակ, կոմս Պ. Կիսելեվ, որի մասին խօսեցինք վերևում, իբրև պետական կալուածների մինիստր, անցկացրեց մի ռէֆօրմ Նիկոլայ I կայսրի օրով, որ բարւոքեց պետական գիւղացիների դրութիւնը, և բացի դրանից իր ամբողջ կեանքում աշխատեց գիւղացիների ազատութեան համար՝ ի լրումն «ազատ գիւղացիների մասին օրէնքի»:

Նիկոլայ I կայսրը հրատարակեց մի նոր «օրէնք պարտաւորիչ գիւղացիների մասին», որ չէր թոյլատրում ազատել գիւղացիներին առանց հողի, իսկ հողի համար գիւղացիները պարտաւոր էին պայմանագրով հատուցանել կամ աշխատութեամբ և կամ դրամով, այսինքն ճորտութեան տեղ բեգառ, տուրք տալ: Գիտակցելով որ «ճորտութիւնը չարիք է», Նիկոլայ I-ը սկսեց պատրաստել յաջորդական անցումն դէպի իրերի մի ուրիշ կարգ և շնորհիւ կոմս Կիսելեվի՝ նրա օրով գոնէ պետական գիւղացիները հողային կազմութիւն ստացան: Ապա 1841 թ. Նիկոլայ I արգելեց ծախել գիւղացիներին հատ-հատ, այսինքն կարելի էր ծախել միայն ընտանիքով և ոչ բաժանել մարդը կնոջից

կամ ծնողները՝ երեխաներից։ Նոյնպէս իրաւունք տուեց պետական կալուածների մինիստրին գնել ազնուականների կալուածները աճուրդով, և այդպիսի հողերի վրայ եղած ճորտերին թոյլատրվում էր վերագնել իրանց ազատութիւնը։

Եւ այսպէս՝ XIX դարի առաջին կիսում ռուս հասարակութեան առաջադէմ տարրերը համակուած էին անկեղծօրէն ազատագրական ձգտումներով։ Պէտք է ասել, որ նրանց քարոզները՝ ջնջել ճորտութիւնը՝ հասնում էին և գիւղացիների ականջին, ուստի և գիւղացիական յուզմունքները, խռովութիւնները անպակաս էին։ Գիւղացիները զգում էին, որ մօտ է իրանց ազատութեան ժամը. պոմէշչիկները զայրանում էին, և թէև տեսնում էին, որ ճորտութեան օրերը համրուած են, բայց դարձեալ զարհուրում էին այդ մտքից։ Նրանց թւում էր, որ եթէ ջնջուի ճորտութիւնը, աշխարհումս ամեն բան տակն ու վրայ կը լինի և այլ ևս անկարելի կը լինի ապրել, ուստի և ամեն կերպ աշխատում էին թոյլ չտալ, որպէսզի գիւղացիների մէջ տարածուեն լուրեր ճորտութեան ջնջման մասին։ Խօսում էին ճորտութեան ջնջման ծրագիրների մասին միայն շշուկներով, որ չլինի թէ ճորտերը լսեն։ Եւ եթէ գտնվում էր մի պոմէշչիկ, որ ցանկութիւն էր յայտնում ազատել իր ճորտերին, ինչպէս՝ օրինակ՝ երիտասարդ ուսեալ պոմէշչիկ Եակուշկինը, նրան համարում էին խելագար։

Բայց յոյսերը օրէ-ցօր զօրանում էին. ճորտերը ապրում էին յոյսով՝ շուտով իրանց ազատ տեսնելու, երբ յանկարծ մի նոր դէպք եկաւ խորտակելու այդ բոլոր յոյսերը, և սկսուեց մի նոր սոսկալի ռէակցիա։ Այդ դէպքը 1848 թ. համաեւրօպական յեղափոխութիւնն էր, որից զարհուրած՝ Նիկօլայ I կայսրի կառավարութիւնը սկսեց սարսափելի հալածանք ազատագրական ձգտումների և նրանց արտայայտողների դէմ։ Պետրաշեվցիներից ինքը՝ Պետրաշեվսկին, նշանաւոր վիպասան Դօստօեվսկին և Ախշարումովը (հայ ծագումով, որ մի քանի ժամանակ սրանից առաջ վախճանուեց և որ նոյնպէս գործում էր յօգուտ ազատագրութեան), դատապարտուեցին կախաղանի, բայց յետոյ ներումն ստանալով աքսոր ուղարկուեցին. փակուեցին ամսագրերը, սահմանափակուեց համալսարանների ուսանողների թիւը և տիրեց գերեզմանային լռութիւն. մոռացուեցին նոյն իսկ Նիկօլայ I-ի ծրագրած թեթև ռէֆօրմները։

Սակայն, ինչպէս բնութեան մէջ յաճախ պէտք են լինում, օդը թարմացնելու համար, որոտումներ, փայլակ և կայծակ, նոյնը պէտք է լինում և հասարակական կեանքի մէջ. և այդպի-

սի որոտումն Ռուսաստանի համար հանդիսացաւ Ղրիմի պատերազմը, 1853 թ., որ եկաւ մերկացնելու հասարակութեան առաջ պետութեան բոլոր խոցերը։ Այդ պատերազմը ցոյց տուեց այն խոր վիհը, որի գլխին կանգնած էր Ռուսաստանը շնորհիւ ճորտութեան. Նա ցոյց տուեց, թէ երկիրը ամեն բանի մէջ որքան յետ էր մնացել Եւրոպայից. չկային ոչ երկաթուղիներ, ոչ հեռագիր. զինուորները հագուած էին վատ, կերակրվում էին վատ, ճնշուած էին իրանց հետ ունեցած կոպիտ վարմունքով։ Պատերազմը անաջող ելք ունեցաւ Ռուսաստանի համար. Սեվաստոպոլն առնուեց. ռուսական նաւատորմը ծովասոյզ եղաւ։

Մի խօսքով՝ չկար պետութիւն ժամանակակից մտքով, այլ երկու բաժան-բաժան մասեր—ճորտատէրեր և ընկղմուած գիւղացիներ, ճորտեր։ Այդ զգաց կառավարութիւնը, զգաց և Նիկոլայ I կայսրը, որ վախճանուեց պատերազմի վերջում և իր թագաժառանգին ասաց մեռնելիս. «Քեզ եմ յանձնում իմ կոմանդան, բայց անկարգ ձևով»։

Գահ բարձրացաւ Ալէքսանդր II, որին և վիճակուած էր գլուխ բերել մեծ րէֆօրմն ու ջնջել ճորտութիւնը։

---

## V

Ղրիմի պատերազմի անաջողութիւնը, ինչպէս ասացինք, ցոյց տուեց, որ անհրաժեշտ է առանց մի րոպէ յետաձգելու խոշոր բարենորոգութիւններ կատարել և ամենից առաջ վերջ դնել ճորտութեան ամօթալի դրութեան։

Բարձրանալով գահ 1855 թ. փետրուարի 19-ին, Ալէքսանդր II կայսրը, պէտք է ասել, շատ էլ չէր պատրաստուած և տրամադիր չէր վերանորոգչի դեր կատարելու։ Պալատական շրջաններում նա, թագաժառանգ եղած ժամանակ, յայտնի էր իբրև ոչ համակրող ճորտութեան ջնջման գաղափարին։ Թէև նա աշակերտն էր նշանաւոր բանաստեղծ Ժուկօվսկիի, որ իր ժամանակին աշխատել էր ներշնչել նրա մէջ մարդասիրական սկզբունքներ, բայց և միևնոյն ժամանակ որդին էր իր հօր՝ Նիկոլայ I ի, որի յետադիմական քաղաքականութեանը նա համակրում էր մինչև 1854 թիւը։ Բայց գահ բարձրանալով՝ Ալէքսանդր II կտրուկ կերպով փոխեց իր հայեացքը և իր տրամադրութիւնը։

Նա ըմբռնեց և գիտակցեց, որ ոչ միայն մարդասիրական սկըզբունքների և զգացումների համար, այլ և պետական նկատումներով պէտք է զիջել պատմական պրօցէսսի անդիմադրելի ոյժին; ուստի և վճռեց անպատճառ գլուխ բերել ճորտութեան ջնջման րէֆօրմը։ Եւ մի անգամ վճռելով, Նա արդէն մնաց անխախտելի իր համոզման մէջ և սկսեց տոկունութեամբ, բայց զգուշութեամբ առաջ քշել իր ծրագիրը։ Նա աշխատեց իրանց ազնուականներին, պօմէշչիկներին համոզել այդ րէֆօրմի անհրաժեշտութեան մէջ։ Նշանաւոր են այն խօսքերը, որ Նա արտասանեց Մօսկվայում 1856 թ., ուղղուած ազնուականներին. «Լուրեր են պտտում, թէ ես կամենում եմ յայտարարել գիւղացիների ազատութիւնը. դա ճիշտ չէ. և այդ պատճառով եղել են մի քանի անկարգութիւններ գիւղացիների կողմից։ Սակայն ես չեմ ասել նոյնպէս, թէ դրա դէմ եմ ես։ Մենք ապրում ենք մի այնպիսի դարում, որ ժամանակով դա էլ պէտք է լինի։ Կարծում եմ, որ դուք էլ համամիտ էք ինձ, հետևաբար անհամեմատ աւելի լաւ կը լինի, եթէ դա պատահէ վերևից, քան ներքևից»։ Եւ այսպէս՝ Նա զգուշութեամբ յայտնեց հողատէրերին իր կամքը, թէ աւելի լաւ է ազատել գիւղացիներին վերևից, չսպասելով որ նրանց ազատեն ներքևից

Այս յայտարարութեան վրայ պօմէշչիկները յուզուեցին, իսկ գիւղացիների ազատութեան կողմնակիցները սաստիկ ուրախացան. բայց ճորտութեան պաշտպանները աշխատեցին ամեն կերպ խափանել գործը։ Կայսրը խնդրեց բոլոր ազնուականներին յայտնել իրանց կարծիքները գիւղացիների ազատութեան առիթով։ Յօգուտ ազատութեան ամենից առաջ կարծիք յայտնեցին Տվէրի ազնուականները։

Ալէքսանդր II սկզբում հաստատեց «գաղտնի կօմիտէտ», իր հօր՝ Նիկօլայ I-ի նման. այդ կօմիտէտը պէտք է բարւոքէր գիւղացիների դրութիւնը. բայց նրա անդամները բոլորն էլ ճորտական իրաւունքի կողմնակից էին և աշխատում էին ազատել գիւղացուն առանց հողի։ Այդ կօմիտէտը սակայն երկար չդիմացաւ. արդէն յայտնի համարձակ և կայսրի թոյլտուութեամբ ազատագրութեան գործի համար աշխատում էին թարմ ոյժեր, գործունեայ, համարձակ մարդիկ, ուստի և «գաղտնի կօմիտէտի» զբաղմունքները ակամայ դադարեցին գաղտնի լինել. այդ զբաղմունքներն ենթարկվում էին հասարակական դատաստանին։ Մի խումբ մարդիկ, որոնք նուիրուած էին գիւղացիներին ազատելու գաղափարին, շրջապատեցին կայսրին և սկսեցին ազդել նրա վրայ և իրանց ճառերով բորբոքել նրա ցանկութիւնները.

*կայծը և դարձնել մի մեծ հրդեհ։ Այլևս ճորտատէրերի գան-գատները, տրտունջները չէին կարողանում շարժել կայսրի սիր-տը, և ազնուականները հասկացան, թէ հասել է ժամանակը՝ կատարելու կայսրի կամքը, ուստի նրանք սկսեցին ամեն տեղ նահանգական կոմիտէտներ կազմել և քննել այն հարցը, թէ ինչպէս ազատել գիւղացիներին, հողո՞վ թէ՞ առանց հողի։*

*Շուտով «գաղտնի կոմիտէտի» տեղ հաստատուեց գլխա-ւոր կոմիտէտ, որի նախագահ նշանակուեց Ռոստովցեվ և նրա օգնական՝ Նիկոլայ Միլիւտին։*

*1857 թ. դեկտեմբերի 28-ին Մոսկվայում, վաճառական-ների ժողովի դահլիճներում, հաւաքուեցին մօտ 180 հոգի գիտ-նականներ, գրողներ, պրոֆէսօրներ և այլ գործիչներ։ Այդտեղ հացկերոյթի ժամանակ կրակոտ ճառեր արտասանուեցին, բա-ժակներ առաջարկուեցին կայսրի կենացը. շատերը լաց էին լի-նում ուրախութիւնից։ Պետերբուրգի համալսարանի պրոֆէսօր Կավելինը իր բաժակաճառի մէջ ասաց. «Յոյս ունենանք, որ ազնուականութիւնը ընդունակ կը հանդիսանայ քննել գործերը ոչ միայն մասնաւոր շահերի, այլ և ընդհանուր-ժողովրդական օգտի տեսակէտից. ով ունի իրաւունք և իշխանութիւն, նա պատասխանատու է իր գործողութիւնների համար առաջի Աստուծոյ, հայրենիքի և պատմութեան»։ Մի վաճառական՝ Կո-կօրեվ ասաց. «22 միլիօն մարդկանց համար ծագում է քաղաքա-ցիական հաւասար-իրաւունքի արշալոյսը։ Լինենք անկեղծ և*



**Յուրիյ Սամարին**
*(1819—1876)*



**Իշխ. Վլ. Ա. Չերկասսկի**
*(1821—1878)*

պարզ՝ մեր հայրենիքի այսպիսի մեծ դէպքերի ժամանակ՝ և խօսենք ճշմարտութիւնը։ Չէ՞ որ բոլոր մեր դրամագլուխները կազմուել են գլխաւորապէս գիւղացիներից... Որպիսի՜ գեղեցիկ առիթ՝ երախտահատոյց լինելու գիւղացիներին մեզ տրուած հարստութեան համար»։

Այդպէս էին խօսում Ռուսաստանի լաւագոյն մարդիկ։ Այդ դէպքերի ազդեցութեան ներքոյ կենդանացան լրագիրները, գրականութիւնը։ Ռուսաստանի բոլոր անկիւններում քննվում էին նոյն խնդիրները, որոնք արծարծվում և քննվում էին նահանգական կոմիտէներում, իսկ այդ կոմիտէները ցանցի պէս ծածկեցին ամբողջ Ռուսաստանը։ Ինքը գիւղացիական մեծ զանգուածը, որ ամենից անձկութեամբ սպասում էր երանաւէտ օրուան, մնում էր սակայն լուռ և մունջ, ընկղմուած լինելով խորին տգիտութեան մէջ։ Խօսում և գործում, ծրագիրներ էր յղանում ռուս հասարակութեան գիտակից մասը— գրողները, գրականագէտները, գիտնականները և ինտելիգենտ գործիչները. կազմվում էին ակումբներ. մարդիկ, որոնք համամիտ էին, թէ գիւղական ժողովուրդը պէտք է ազատուի, և տարբերվում էին սակայն իրանց հայեացքներով այն մասին, թէ ինչ եղանակով կատարել այդ ազատութիւնը, քննում, մտածում էին միջոցների մասին։ Եւ մեծամասնութիւնը համաձայն էր Կավելինի առաջարկած միջոցի հետ, այն է՝ ազատել գիւղացիներին հողով, այսինքն հողը դարձնել մշակող գիւղացու սեպհականութիւն, իսկ կալուածատիրոջը վճարել նրա գինը՝ գանձարանից. ապա գիւղացիներից յետ ստանալ երկար տարիների ընթացքում գանձարանի տուած փողը։ Այդ ազատամտական խմբին էին պատկանում Իւրիյ Սամարինը, իշխան Վլ. Ա. Չերկասսկին, Ունկովսկին, որ ապա աքսորուեց Ներքին գործերի մինիստր Լանսկիի հետ ունեցած ընդհարման պատճառով, և այլք։



Ալ. Միխ. Ունկովսկի
*(1828—1893)*

Գիւղական համայնքի և արտէլի ջերմ պաշտպան հանդիսացաւ և Նիկ. Գավր. Չերնիշևսկին, որ «Современникъ»

ամսագրի էջերում գովում էր տնտեսութեան այդ ձևերը, որոնցից, նրա կարծիքով, հեռաւոր ապագայում պէտք է դուրս գար մի վերածնուած պետութիւն։ Իսկ Հերցէնը, Լոնդոնից, իր «Колоколъ» ամսագրի մէջ, քարոզելով ազատագրական մտքերը, յայտնեց, որ խոնարհվում է Ալէքսանդր II-ի անձնաւորութեան առաջ, և բացագանչեց. «Դու յաղթեցիր, Գալիլէացի»։ Հերցէնը առաջարկեց նոյնպէս ազատել գիւղացիներին հողով, ջնջել նախնական ցենզուրան, փակել գաղտնի ոստիկանութեան բաժանմունքը, վերացնել մարմնական պատիժները։

Ի հարկէ, ռուս հասարակութեան այդ առաջադէմ ձըգտումները թշնամութեան և հակառակութեան էին հանդիպում թունդ ռէակցիոնէրների և ճորտութեան պաշտպանների կողմից, որոնք ճորտատիրական իրաւունքի մէջ տեսնում էին ինչոր մի նուիրական բան և պետութեան խարիսխը։ Բայց բոլոր այդ հակառակութիւնները և թշնամութիւնները փշրվում էին ու ջարդվում և անկարող եղան խափանել մեծ ռէֆօրմը։

---

## VI

Գիւղացիներին ճորտութիւնից ազատելու պլանը պահանջում էր հսկայական աշխատութիւն և, բացի դրանից, տոկուն ու յամառ կռիւ ճորտութիւնը պաշտպանողների դէմ։ Ամբողջ այդ ծանր աշխատութիւնը և յամառ կռիւը իրանց ուսերի վրայ տարան մի քանի մարդիկ, որոնց անունը սերտ կերպով կապուած է գիւղացիների ազատագրութեան գործի հետ. այդ անձինք նուիրեցին այդ գործին իրանց հոգին և ոյժերը։ Յիշենք այստեղ այդ գործիչներից մի քանիսին, որոնք ամենից շատ նպաստել են գործի աջողութեան։

Առաջին տեղը բռնում է կայսր Ալէքսանդր II Նիկօլայեվիչ, որ կոչուեց «Ազատարար»։ Նրա ազդեցութիւնը գիւղացիների ազատագրութեան գործի վրայ՝ ահագին էր։ Ճիշտ է, նա միահեծան ինքնակալ լինելով հանդերձ՝ միայնակ չէր կարող իրագործել այդ նպատակ, որը իրագործուեց շատ մարդկանց միահամուռ ջանքերով, բայց Ալէքսանդր II-ի կամքը ահագին նշանակութիւն ունեցաւ։ Եթէ չլինէր այդ կամքը, եթէ Ալէքսանդր II-ի հոգու մէջ չլինէր իրական, անկեղծ ցանկութիւն՝ ազատելու գիւ-



**Ալէքսանդր II Կայսր «Ազատարար»**
*(1818—1881)*

ղացիներին, այդ գործը, թէև արդէն հասունացած, էլի կը յետաձգուէր։ Բայց Ալեքսանդր II համարձակ, ի լուր ամենեցուն յայտարարեց իր ցանկութիւնը՝ ազատել գիւղացիներին, և նրա ձայնը թնդաց իբրև կոչնակ դէպի ընդհանուր աշխատութիւն. Նա ոյժ տուեց ժողովրդի բարեկամներին՝ խօսելու այդ գործի մասին, սկսելու այն աշխատութիւնը, որի արդիւնքն եղաւ ճորտութեան ջնջումը։ Այդ ժամանակուայ գրող Հերցէնը այսպէս գնահատեց Ալեքսանդր II-ի արժանիքը. «Ալեքսանդր II կատարեց շատ, շատ բան. Նրա անունը այժմ ամենքից բարձր է։ Նա կռուեց յանուն մարդկային իրաւունքների, յանուն տանջանքների՝ ստոր բորբոսնած պլանտատորների դէմ և խորտակեց նրանց։ Ոչ ռուս ազգը» ոչ ևս համաշխարհային պատ-

*մութիւնը այդ երբէք չի մոռանայ։ Մենք ողջունում ենք նրան «Ազատարար» անունով։*

*Ալէքսանդր II-ի մերձաւոր աջակիցներ և օգնականներ եղան գիւղացիների ազատութեան գործի մէջ՝ իր եղբայր մեծ իշխան* Կոնստանտին Նիկոլայեվիչը, *իր հօրեղբօր՝ մեծ իշխան Միխայիլ Պավլովիչի ամուսին՝ մեծ իշխանուհի* Ելենա Պավլովնան, *գեներալ ադիւտանտ* Ռոստովցեվը *և* Նիկ. Ա. *Մ*իլիւտինը։



**Մեծ իշխ. Կոնստ. Նիկոլայեվիչ**
*(1827—1892)*



**Մեծ իշխանուհի Ելենա Պավլովնա**



**Ե. Ի. Ռոստովցեվ**
*(1803—1860)*



**Ն. Ա. Միլիւտին**
*(1818—1872)*

Մեծ իշխան Կօնստանտին Նիկօլայեվիչը իր եղբօր՝ Ալեքսանդր II-ի ամենամօտ օգնականն էր։ Նա ամբողջ ժամանակ եռանդով աշխատում էր խմբագրական մասնաժողովի մէջ։ Երբեմն-երբեմն Ալեքսանդր II-ի հոգին վհատվում էր, ընկնելով այն մարդկանց ազդեցութեան ներքոյ, որոնք շշնջում էին նրա ականջին, թէ գիւղացիների ազատութեան գործը վտանգաւոր գործ է, ուստի պէտք է թողնել։ Ահա այդպիսի րօպէներում մեծ իշխ. Կօնստանտին Նիկօլայեվիչը կարողանում էր միշտ ազդել եղբօր վրայ և խրախուսել նրան ու առաջ տանել գործը։ Կօնստանտին Նիկօլայեվիչի մեծ արժանիքը և գնահատելի ծառայութիւնը գործին՝ կայանում էր մանաւանդ այն հանգամանքի մէջ, որ նա պնդում էր հրապարակայնութեան վրայ, այսինքն՝ որ գիւղացիների ազատութեան գործը քննուի ոչ թէ գաղտնի, այլ հրապարակօրէն, բաց-յայտնի, մի բան, որ ամենևին դուր չէր գալիս ճորտութիւնը պաշտպանողներին, որովհետև նրանք լաւ հասկանում էին, որ երբ գիւղացիներին ազատութիւն տալու ծրագրի բարի աւետիսը տարածուի ամբողջ Ռուսաստանում, այլ ևս հանգցնել գործը անկարելի կը լինի։ Մեծ իշխանը շատ էր աշխատում. Նա յաճախ ամբողջ գիշերներ նստում էր, կարդում զանազան նամակներ, զեկուցագրեր. Նա պաշտպանեց խմբագրական մասնաժողովի մէջ նադէլների սկզբունքը, այսինքն՝ որ գիւղացիներին ազատեն հողով։

Ալեքսանդր II իր եղբօր մասին միշտ ասում էր. «Իմ առաջին օգնականը գիւղացիական գործում»։

Ոչ պակաս եռանդ և ծառայութիւն մատուցեց գործին և մեծ իշխանուհի Ելենա Պավլօվնան։ Խելօք ի բնէ և լաւ կրթըւած, այդ նշանաւոր կինը կարողացաւ համախմբել իր շուրջը ձեռնհաս անձանց և դրդել նրանց դէպի աշխատութիւն յօգուտ ճորտութեան ջնջման։ Դեռ Նիկօլայ I կայսրի օրով նա յաճախ խօսում էր գիւղացիական գործից կոմս Կիսելեվի հետ, որի համոզիչ ճառերը խորապէս տպաւորուեցին նրա հոգու մէջ, և նա մինչև կեանքի վերջը հաւատարիմ մնաց իր տուած ուխտին՝ նպաստել ճորտութեան ջնջման։ Ալեքսանդր II-ի ժամանակ Ելենա Պավլօվնան արդէն գործնական միջոցների է դիմում և ինքն է օրինակ տալիս պոմեշչիկներին, թէ ինչպէս պիտի ազատել գիւղացիներին։ Պօլտավայի նահանգում նա ունէր մի մեծ կալուած՝ Կարլօվկա. Նա ոչ միայն այդտեղի գիւղացիներին ազատութիւն տուեց, այլ և թոյլ տուեց նրանց յետ գնել իր հողերից այնքան մասն, որքան հարկաւոր էր գիւղացիների գոյութիւնը ապահովելու համար։ Ահա այդ գործի ժամանակ իշխանուհին

ծանօթացաւ գիւղացիական ռեֆօրմի մի այլ նշանաւոր գործչի՝ Նիկօլայ Ալեքսանդրօվիչ Միլիւտինի հետ։

Ն. Ա. Միլիւտինը ծագում էր մի ոչ-հարուստ ազնուական ընտանիքից. երիտասարդը աւարտելով իր ուսումը՝ ստիպուեց մտնել 17 տարեկան հասակում ծառայութեան մէջ, ապրուստ ճարելու համար։ Այդ ժամանակուայ ամբողջ երիտասարդութեան նման՝ Միլիւտինն էլ շատ զուարճանում էր։ Նրա մայրը շատ բարի, կրթեալ և զգայուն սրտի տէր մի կին էր և մեծ ազդեցութիւն ունեցաւ որդու վրայ, դաստիարակելով նրա մէջ մարդասիրական զգացումներ։ Մի անգամ պատահեց մի դէպք, որ մեծ ազդեցութիւն ունեցաւ նրա ապագայ գործունէութեան վրայ։ Բարեկենդանի վերջին օրը երիտասարդ Միլիւտինը իրան ամբողջովին նուիրեց բերկրութիւններին։ Նա գնաց առաւօտեան պարահանդէսի, այդտեղից հացկերոյթին, ապա երեկոյեան նորից պարահանդէսի։ Գիշերը ուշ վերադարձաւ տուն կենսուրախ, գոհ, սիրահար՝ և պատմեց մօրը իր զուարճութիւնները։ Մայրը հարցրեց նրան. «Հոգ տարե՞լ ես քո կառապանի մասին, բաց թողե՞լ ես նրան՝ գնալ ճաշելու և տաքանալու»։ Երիտասարդը իր զուարճութիւնների մէջ մոռացել էր իր ճորտ կառապանի գոյութիւնն անգամ, և խեղճ կառապանը ամբողջ 15 ժամ քաղցած ծարաւ մնացել էր կառքի վրայ նստած՝ 25 աստիճան սառնամանիքի մէջ։ Մայրը սաստիկ յանդիմանեց որդուն այդպիսի անփթութեան համար, և այդ լուրջ յանդիմանութիւնը ստիպեց պատանուն մտածել ճորտերի դրութեան մասին։

Եւ երբ հասաւ այն ժամանակը, որ կոչեց հայրենիքի լաւագոյն մարդկանց դէպի վեհ գործը՝ ճորտերի ազատութիւնը, Միլիւտինը ամբողջ հոգով նուիրուեց այդ գործին։ Նա գրեց ընդարձակ զեկուցագրեր, որոնց մէջ ապացուցանում էր գիւղացիներին հող տալու անհրաժեշտութիւնը, և այդ սկզբունքը ջերմօրէն պաշտպանեց խմբագրական մասնաժողովում։ Ճորտութեան պաշտպանները կամ կրեպօստնիկները ամեն կերպ աշխատում էին հեռացնել նրան գործից, սևացնել կայսրի աչքում. և թէև նրանց ջանքերը աջողուեցին, և գիւղացիների ազատութիւնից մի քիչ առաջ նա իր պաշտօնից արձակուեց, բայց, շնորհիւ մեծ իշխանուհի Ելենա Պավլօվնայի, որ համոզեց կայսրին, թէ որքան օգտակար է եղել Միլիւտինը, սա ձեռք բերեց իր նախկին հեղինակութիւնը։

Գեներալ-ադիւտանտ Ե. Ի. Ռօստօվցեվը ծագում էր վաճառականական ընտանիքից։ Երիտասարդութեան ժամանակ, երբ մի փայլուն գվարդէական սպայ էր, նա ոչնչով չէր

տարբերվում իր ընկերներից. Նրանց պէս քէյֆեր էր անում և մտածում էր միայն կեանքի վայելչութիւնների ու հաճոյքների մասին. իր համոզումներով նա կրեպօստնիկ էր, այսինքն՝ պաշտպան ճորտութեան։ Բայց արդէն հասուն հասակում նրա համոզումները յեղաշրջուեցին իր որդու ազդեցութեան ներքոյ, և կատարուեց մի զարմանալի գործ. որդին համոզեց հօրը, և սա գիւղացիների ազատութեան հակառակորդից դարձաւ նրանց ջերմ պաշտպան և մինչև իր մահը կռուեց այդ գործի համար։ Ահա այդ մարդուն վիճակուեց լինել խմբագրական մասնաժողովների առաջին նախագահ։ Սկզբում, երբ կայսրը յանձնեց նրան այդ պատասխանատու պաշտօնը, նա կամեցաւ մերժել, բայց Ալեքսանդր II-ի պնդման վրայ՝ հպատակուեց։ Անցնելով գործի գլուխ և տեսնելով, որ ինքը չունի հարկաւոր գիտութիւնը և պաշարը մի այդպիսի մեծ և պատասխանատու գործի գլուխ կանգնելու և երբ մասնաժողովներում սկսուեցին վիճաբանութիւններ, թէ արդեօք գիւղացիներին ազատել հողով թէ՞ առանց հողի,'ու նա նկատեց, որ իրան պակասում է հարկաւոր կրթութիւնը՝ իր հայեացքները առաջ քշելու համար, նա ուղևորուեց 1858 թ. արտասահման, ուր շատ աշխատեց. այդտեղից նա գրեց կայսրին չորս նամակ, որոնց մէջ նա ջերմօրէն պաշտպանում էր և հիմնօրէն պատճառաբանում ճորտութեան ջնջման անհրաժեշտութիւնը։ Այդ նամակները սաստիկ ազդեցութիւն ունեցան կայսրի կամքի և վճռականութեան վրայ։ Դժբախտաբար Ռոստովցեվին վիճակուած չէր տեսնել իր աշխատութիւնների պտուղը. նա չապրեց մինչև փետրուարի 19-ը և մի քիչ առաջ մեռաւ. ու մեռնելիս նրա ամբողջ մտածողութիւնները կենտրոնացած էին այն հարցի վրայ, թէ ինչպէս կը վերջանայ այն գործը, որի մէջ նա դրել էր իր հոգին։

Տեսնենք այժմ, թէ ինչպէս աւարտուեց այդ գործը։

---

## VII

Մենք տեսանք, որ «գաղտնի» կոմիտէտի տեղ հաստատուեց «Գլխաւոր Կոմիտէտ գիւղացիական գործի համար», Ռոստովցեվի նախագահութեամբ։ Բացի դրանից՝ ներքին գործերի մինիստրութեան կից հաստատուեց և զեմստվային բաժանմունք,

ուր մտնում էին նահանգական կոմիտէտների բոլոր ծրագիրները։ Գլխաւոր Կոմիտէտին ևս կից կազմուեց մի յանձնաժողով նահանգական կոմիտէտների ծրագիրների նախնական քըննութեան համար։ Այդ յանձնաժողովի միջից հետզհետէ կազմուեցին խմբագրական մասնաժողովները, որոնք և գլխաւորապէս իրանց ուսերի վրայ տարան ամբողջ աշխատութիւնները գիւղացիների ազատութեան մասին։

Մինչ ղեմստվային բաժանմունքը և ապա նաև խմբագրական մասնաժողովների մեծամասնութիւնը յարեցին լաւագոյն և գիտակ մարդկանց կարծիքներին, Գլխաւոր Կոմիտէտը, որի կազմի մէջ կային և ճորտութեան պաշտպան անձինք, ինչպէս միտրոպոլիտ Ֆիլարէտը և այլք, երկար ժամանակ յամառում էր ճորտատիրական հայեացքների պաշտպանութեան մէջ։

Ալէքսանդր II կայսրը 1858 թ. ճանապարհորդեց Ռուսաստան, և ռուս ժողովրդի կենդանի տխուր պատկերը ամրապնդեց Թագաւորի մէջ որոշումն՝ վերջ տալու ճորտատիրութեան։ Վերադառնալով այդ ուղևորութիւնից, Թագաւորը օգուտ էր քաղում ամեն մի առիթից՝ խօսելու համար ազնուականների հետ և նորից կոչ անելու նրանց, որ կամաւորապէս կատարեն պատմական անհրաժեշտութիւնը։ Դրանից յետոյ նրա վրայ սաստիկ տպաւորութիւն գործեցին, ինչպէս յիշեցինք, Ռոստովցևի արտասահմանից գրած նամակները։ Եւ ահա 1858 թ. հոկտեմբեր և նոյեմբեր ամիսներին, երբ կայացան Գլխաւոր Կոմիտէտի նիստերը, Թագաւորը բացատրեց իր հրահանգի մէջ, թէ խմբագրական մասնաժողովների անդամները որպիսի հայեացքներով պէտք է ղեկավարուէին. այդ հայեացքներից շատերը Ռոստովցևի արտայայտածներն էին, այն է՝ 1) որ գիւղացին իսկոյն զգայ, թէ իր կենցաղը բարւոքուած է, 2) որ պոմէշչիկը իսկոյն հանգստանայ, թէ նրա շահերը պաշտպանուած են լինելու, և 3) որ զօրեղ իշխանութիւնը մի րոպէ անգամ չխախտուի տեղում։ Ապա հրահանգի մէջ ցոյց էր տըրվում, որ անհրաժեշտ է աշխատել, որպէս զի գիւղացիները յաջորդաբար դառնան հողատէրեր։ Ուրեմն գահի բարձրութիւնից անդառնալի կերպով վճռուած էր հողի վերագնումը, և մասնաժողովները պէտք է միայն մշակէին ծրագրի մանրամասնութիւնները, թէ ինչպէս իրագործել ծրագիրը, որ ոչ գիւղացին վնասուի, ոչ հողատէրը։ Մինչ այդ՝ ամենաթունդ վիճաբանութիւններ էին լինում մասնաժողովների մէջ այն հարցերի շուրջը, թէ գիւղացուն պէտք է ազատել հողո՞վ թէ՞ առանց հողի։ Ազատել առանց հողի՝ կը նշանակէր 25 միլիոն մարդկանց բաց թող-

նել աղքատ. իսկ եթէ տալ նրանց իրանց մշակած հողերը՝ կը նշանակէ զրկել պօմէշչիկներին, որոնք այդ դէպքում կը զըրկուէին և՛ հողից, և՛ գիւղացիներից։ Ի՞նչպէս հաշտեցնել ուրեմն գիւղացիների և պօմէշչիկների շահերը։ Ի վերջոյ գտան մի այսպիսի ելք—գիւղական հողաբաժինների համար նշանակել յետգնումն. գանձարանը կը վճարէ պօմէշչիկներին՝ գիւղացիներին տրուող հողաբաժինների գինը, իսկ ինքը գանձարանը քիչ-քիչ կը ստանայ գիւղացիներից իր տուած գումարները 49 տարուայ ընթացքում։ Դրանով երկու կողմերին էլ գոհացումն տրուած կը լինի։ Բայց ճորտատէրերը կարողացան աջողեցնել, որ գիւղացիական հողաբաժինները (նադէլները) փոքրացուէին և չը տրուէին այն չափով, որ առաջ ենթադրւում էր. բացի դրանից՝ հողը բաժանուեց անհաւասար կերպով. պօմէշչիկները պահեցին իրանց համար լաւագոյն հողերը, իսկ գիւղացիներին նադէլ տուին վատ հողերը։

Նահանգական կօմիտէտները մշակելով գիւղացիներին ազատելու իրանց պլանները՝ ուղարկեցին Պետերբուրգ, Գլխաւոր Կօմիտէտը, իրանց պատգամաւորներին։ Այդ պատգամաւորներից միայն քչերն էին պատկանում ազատամիտների բանակին և դրանց թւում Տվէրի պատգամաւորների պարագլուխ Ունկօվսկին, որոնք ներկայացրին կայսրին մի ուղերձ, ստորագրուած 5 պատգամաւորներից, որի մէջ խնդրում էին 1) շնորհել գիւղացիներին լիակատար ազատութիւն՝ տալով նրանց հողըն ի սեպհականութիւն յետ-գնման միջոցով և այնպիսի պայմաններով, որոնք կործանարար չլինեն պօմէշչիկների համար, 2) կազմել տնտեսական-կարգադրիչ վարչութիւն, ընդհանուր բոլոր դասակարգերի համար, հիմնուած ընտրողական սկզբունքի վրայ, 3) հաստատել անկախ դատաստանական իշխանութիւն, այն է՝ երդուեալների դատարան և քաղաքացիական դատաստանական հաստատութիւններ, անկախ՝ վարչական իշխանութիւնից, 4) տալ հնարաւորութիւն հասարակութեանը՝ մամուլի միջոցով հասցնել ի տեղեկութիւն բարձրագոյն իշխանութեան՝ տեղական կառավարութեան պակասութիւնները և զեղծումները։

Իսկ ազնուականութեան միւս մասը, բաղկացած 18 պատգամաւորներից՝ որոնք շատ էլ համակրող չէին ճորտութեան ջնջման, ներկայացրեց մի այլ ուղերձ, որի մէջ ազնուականները խնդրում էին թոյլ տալ իրանց քննել խմբագրական մասնաժողովների վերջնական աշխատութիւնները մինչև Գլխաւոր Կօմիտէտ մտնելը։

Կայսրն այդ ուղերձներն ուղարկեց Գլխաւոր Կոմիտէտին՝ որ որոշեց Տվէրի ազնուականների ներկայացրած ուղերձի ստորագրողներին յանդիմանութիւն կարդալ. այդ դէպքը ընդհանուր տրտունջ յարուցեց և մի րօպէ երկիւղ ծագեց, թէ կամենում են վերադառնալ հին ժամանակներին։ Կասկածները աւելացան. խախտուեց վստահութիւնը դէպի Կոմիտէտի աշխատութիւնները, մանաւանդ երբ մինիստր Լանսկօյը, որ վախենում էր, թէ խռովութիւններ կարող են ծագել 1859—1860 թ. ազնուականական ժողովների ժամանակ, ուղարկեց մի շրջաբերական, արգելելով շօշափել ժողովներում գիւղացիների ազատութեան հարցը։ Երիտասարդութիւնը սկսեց այլ ևս խէթ նայել Կոմիտէտի վրայ և կազմեց գաղտնի շրջաններ ու ժողովներ։ Ցենզուրան սաստկացաւ և այլ ևս անհնարին դարձաւ գրական վիճաբանութիւնները այնպիսի մտածողների, ինչպէս Դօբրօլիւբօվ, Չերնիշևսկի, համայնքի, արտէլի և գիւղացիների տնտեսական կեանքի այլ ձևերի մասին։ Սկսուեց, ինչպէս կոչվում է, «րէակցիա»։ Այդ միջոցին վրայ հասաւ և Րօստօվցեվի մահը, 1860 թ. սկզբին. վհատուած, յուսահատուած ազնուականների մղած կռուից և խմբագրական մասնաժողովների վրայ եղած յարձակումներից՝ նա հիւանդացաւ և մեռաւ մինչև վերջին րօպէն անձնուէր մնալով «սուրբ գործին»։ Նրա տեղ Գլխաւոր Կոմիտէտի նախագահ նշանակուեց կոմս Պանինը, որ մինչև վերջին ծուծը իր համոզմունքներով կրեպօստնիկ էր, այսինքն ճորտութեան պաշտպան, որի աչքում ժողովուրդը միայն «մի ստոր խառնիճաղանճ» էր։ Այդ հանգամանքն աւելի ևս վհատութիւն առաջ բերեց։

Սակայն ոչ րէակցիան, ոչ Պանինը չկարողացան յետաձգել գիւղացիների ազատութեան հռչակումը, որովհետև գործն արդէն շատ առաջ էր գնացել։ Շուտով կայսրի հրամանով «խմբագրական մասնաժողովները» փակուեցին և նրանց բոլոր աշխատութիւնները յանձնուեցին Գլխաւոր Կոմիտէտին, որին մնում էր միայն պատրաստել ազատութեան մանիֆեստը։ Այդ մանիֆեստը կազմելու գործը նախ յանձնուեց Սամարինին և Միլիւտինին, բայց նրանց կազմածը, իբրև ազատամիտ ոգով գրուած, դուր չեկաւ Պանինին, և նա միտրօպօլիտ Ֆիլարէտին յանձնեց այդ կարևոր դօկումենտի խմբագրութիւնը։ Ֆիլարէտը, որ, ինչպէս գիտենք, չէր համակրում ազատագրութեան գործին, թէև յանձն առաւ, բայց ակամայ, հարկադրուած Բարձրագոյն կամքից։ Փետրուարի 5-ին (1861 թ.) մանիֆեստը կազմուեց

և ուղարկուեց կոմս Պանինին։ Մանիֆեստի առաջին ձևից դուրս ձգուեցին շատ ջերմ արտայայտութիւններ։ Վերջապէս հասաւ XIX դարի Ռուսաստանի զարգացման մէջ ամենամեծ օրը, փետրուարի 19-ը, երբ պետական քարտուղար Բուտկովը տարաւ Թագաւորին մատուցանելու՝ ստորագրութեան համար՝ Թանկագին ակտը, որով 22 միլիոն ճորտերի՝ ազատութիւն էր տրվում։

Եւ Ալէքսանդր II մի փետուրէ գրչով, որ այժմ ևս պահպանվում է Սարատովում, Ռադիշչեվի Թանգարանում, ստորագրեց պատմական այդ մեծ ակտը, որ ապա ուղարկուեց տպարան՝ տպագրուելու հազարաւոր օրինակներով։ Կատարուեց ազատագրութեան մեծ գործը։ Բայց մանիֆեստը իսկոյն չհրատարակուեց. միայն մարտի 5-ին, բարեկենդանի վերջին օրը նա կարդացուեց բոլոր եկեղեցիներում և ապա կպցուեց պատերին իբրև աֆիշներ։ Որքան էլ նրա լեզուն անհասկանալի էր հասարակ ժողովրդի համար, բայց գիւղացին հասկացաւ, ըմբռնեց, որ ինքն այլևս ազատ է, ազատ մարդ է, այլևս ստրուկ չէ, ճորտ չէ։ Եւ արքայական սուրհանդակները սրարշաւ տարան Ռուսաստանի բոլոր անկիւնները մանիֆեստը՝ յայտարարելու ժողովրդին։

Ու այսպէս՝ այն մեծ գործը, որին վաղուց փափագելով փափագում էր գիւղացիութիւնը և կրթեալ հասարակութեան լաւագոյն մասը, կատարուեց։ Ճորտութիւնը տապալուեց, իբրև հին, փտած ծառ, որ պէտք է անպատճառ տապալուէր։ Գիւղացիների ազատութեան հակառակորդները Թագաւորին վախեցնելու համար փսփսում էին, թէ այն օրը, երբ հրատարակուի ազատութիւնը, գիւղացիները ապստամբելու են, յարձակուելու են կալուածատէրերի վրայ և կացիններով սպանելու են ամենքին. բայց, ի հարկէ, ոչ մի բան չպատահեց. ընդհակառակը, այդ օրը, այն է մարտի 5-ին, տիրում էր մի առանձին, հանդիսաւոր խաղաղութիւն և տրամադրութիւն։ Խորին ուրախութիւնը զգացվում էր մեծ լրջութեամբ։ Մարդիկ, որոնք վաղուց սպասում էին այդ ցանկալի օրուան, իրար հանդիպելիս ողջագուրվում էին ասելով, ինչպէս զատկին են ասում՝ «Քրիստոս յարեաւ ի մեռելոց». և շատերը նոյն իսկ լաց էին լինում ուրախութիւնից։

Ու 1861 թ. մարտի 5-ից սկսած՝ Ռուսաստանը սկսեց ապրել նոր կեանքով։ Այդ օր ռուսական հողի վրայ ծա-

գած արևը լուսաւորեց արդէն ոչ ստրուկներին, այլ ազատ մարդկանց։

Եւ թող օրհնեալ լինի յիշատակը այն մարդկանց, որոնք գլուխ բերին ժողովրդի ազատութեան մեծ գործը*)։

---

ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ.—Ներկայ տեսութիւնը կազմեցին Հ. Առաքելեան և Պետրոս Զաքարեան, օգտուելով թէ թարգմանաբար և թէ քաղուածօրէն մի քանի աղբիւրներից, գլխաւորապէս հետևեալ հրատարակութիւններից 1) «Паденіе Крѣпостнаго Права», очеркъ Т. П. Сократовой, Москва, 1911, 2.) «Какъ крестьянамъ дали волю», Н. В. Тулупова и П И. Шестакова, изданіе Сытина, Москва, 1911 г. և 3) Բրօկհաուզի բառարանը։

---

*) Ներկայումս Ռուսաստանում կենդանի են այդ գործիչներից՝ 1) Նիկոլայ Միլիւտինի հարազատ եղբայրը՝ նախկին զինուորական մինիստր Դիմիտրի Միլիւտինը, որին Ռուսաստանը պարտական է կանանց առաջին բարձր կուրսերի բացումը և ընդհանուր զինուորագրութիւնը, և 2) յայտնի աշխարհագիր-վիճակագիր Սեմենովը, անդամ Պետական Խորհրդի, որ նորերս ստացաւ Տեան-Շանսկի տիտղոսը։

Ազատագրութեան նշանաւոր գործիչներից մինն էր և հայազգի Հայրապետեանը (Айрапетовъ), «ուղէլի» ներկայացուցիչը, Տուրգենևի բարեկամը, սակայն նրա մասին բաւականաչափ տեղեկութիւններ պակասում են։

# ՄԱՐԴԸ, ՆՐԱ ԾԱԳՈՒՄԸ ԵՒ ՍԿԶԲՆԱԿԱՆ ՀԱՅՐԵՆԻՔԸ

## II

*Մարդու մօտակայ նախահայրերը.*—Pithecantropus erectus *իբրև անցողական տիպար մարդու և կապիկների միջև.—Ուրիշ հայեացք. կապիկները և մարդը ունեն մի ընդհանուր նախահայր.—Նրա մարդանման բնոյթը.*—Pithecantropus-*ը կապիկների նախահայրը.—Նեանդերտալեան տիպարը մարդու նախահայրը.—Նոր գիւտեր Բելգիայում, Աւստրիայում, Ֆրանսիայում.—Հէյդելբէրգի մօտ գտնուած ծնօտը.—Հէյդելբէրգեան տիպարը իբրև կապիկների և մարդու ընդհանուր նախահայր։*

---

*Անցեալ գլխում պատկերացուց մեզ մարդու նախահայրերի բնոյթը։ Ինչպէս նախահայրերն էին «կենդանիներ», նոյնպիսի կենդանի է և մարդը, միայն կենդանի՝ կանգնած ամենաբարձր աստիճաններում և ուղեղի ամենաբարձր գործունէութեամբ։*

*Օրգանական աշխարհի յայտնուելը պատճառ էր և մարդու առաջ գալուն։*

*Սակայն կենդանական տեսակներից ո՞րը աւելի մօտ է մարդ-տեսակին։ Հէկելը մանրամասն նկարագրելով, համեմատելով մարդուն բոլոր եղած գրուպպաների հետ՝ վերջը նրան դնում է կապիկների շարքին և այն էլ մարդանման կապիկների։ Անցեալ գլխում պարզուեց, որ մարդուն շատ մօտ են գօրիլլա, գիբբօն, շիմպանզէ և օրանգ կապիկները։*

*Յատկութիւնների զարմանալի նմանութիւնը բոլորի ուշադրութիւնը դարձրեց այդ կապիկների վրայ։ Մի ժամանակ տիրում էր այն կարծիքը, թէ յիշեալ կապիկների մէջ պիտի փնտռել մարդու նախահօրը։ Հիմա էլ հասարակական որոշ խաւերում տակաւին կարծում են, թէ «մարդը կապիկներից է առաջ եկել»։*

*Գիտութեան մարդիկ նմանապէս կարծում էին, որ մարդը կապիկներից է առաջ եկել, բայց նախ՝ ոչ ընդհանրապէս կապիկներից, այլ, շատ հաւանական է, մարդու նախահայրը մարդա-*

նման կապիկներից է։ Եւ այժմ այդ նախահայրը գոյութիւն չունի. նա վաղուց է անհետացել. արդի մարդանման կապիկների մէջ նրան չէ կարելի գտնել։

Նոյն իսկ ցոյց էին տալիս, թէ որտեղ պիտի լինէր մարդու սկզբնական հայրենիքը։ Որովհետև մարդանման կապիկները գլխաւորապէս Աֆրիկայի բնակիչներ են, այստեղից եզրակացնում են, որ մարդն էլ անպայման Աֆրիկայից է առաջացել։

Ընդհանուր կարծիք էր, որ մարդու նախահայրը մարդանման կապիկներից էր։ Մատնացոյց էին անում գիբբօնին՝ իբրև անհետացած նախահօրն ամենամօտը արդի տեսակներից։ Կանգ առան և շիմպանզէի վրայ։ Մի խօսքով՝ հարցը միմիայն նրանում էր՝ գտնել նախահօր կամ անցողական ձևերի մնացորդները։

Եւ արդարև՝ երկար պեղումները հարուստ արդիւնքներ էին տալիս։ Տարբեր վայրերում, երկրի շերտերում գտնվում էին ոսկրային մնացորդներ, նոյն իսկ ամբողջ կմախքներ։ Այդպիսի մնացորդներով հարուստ գտնուեց մանաւանդ Ֆրանսիան։ Նայելով գտնուած ոսկրների ձևերին, չէր կարելի նրանց չդասել մարդկային ոսկրների շարքը. բայց միևնոյն ժամանակ կային և որոշ շեղումներ ձևի մէջ։

Դիմենք գտնուած առաջին նշանակալից մնացորդին։ 1894 թ. հարաւում, Եավա կղզում, Եւգենիյ Դիւբուան գտաւ ոսկրներ, կմախքի մնացորդներ։ Ուղիղ ազդրը իրաւունք էր տալիս ենթադրելու, որ այդ էակը չորքոտանի չէր։ Նա ունէր ուղղահայեաց դիրք. այդ յատկութիւնը շատ է նմանեցնում մարդուն։ Միւս ոսկրների ձևերը նսեմացնում են նմանութիւնը։ Ձեռքերը երկար էին, գանգն էլ աւելի կապկային. մի խօսքով՝ շատ մօտ էր նա արդի մարդանման կապիկներին։

Pithecantropus erectus-ը (մարդ-կապիկ), ինչպէս Դիւբուան էր անուանել յիշեալ էակին, իր զարգացողութեամբ, կազմուածքով կապիկներից աւելի բարձր էր։ Սկիզբներում ենթադրում էին, որ ithpecantropus-ը երրորդական*) շրջանում էր ապրելիս

*) Երկրի զարգացումը բաժանվում է դարաշրջանների, էպօխաների։ Բաժանումը սկսվում է այն ժամանակից, երբ երկրիս վրայ կային պայմաններ կեանքի ծագման համար, երբ կեանքի սաղմերն էին յայտնվում։ Ահա կարճ կերպով այդ դարաշրջանները. 1) Արխէյեան (Архейская эпоха—բաժանվում է շրջանների), 2) Պալէօզօյեան (Палеозойская յատուկ շրջաններ), 3) Մէզօզօյեան (Мезозойская—շրջաններ)։ Մեզ համար այժմ հետաքրքրական է վերջին էպօխան՝ 4) Կէնօզօյեան (Кэнозойская), ա) Երրորդական շրջան, բ) Չորրորդական շրջան, որա ստորաշրջանները՝ Սառցային (ледниковый), Յետսառցային (Послѣледниковый).

եղել, բայց յետոյ պարզուեց, որ այն շերտերը, ուր որ գտել էին նրան, վերաբերում էին սառցային շրջանին։ Ուրեմն pithecantropus-ն էլ այդ շրջանում էր ապրում։

Երբ գտան pithecantropus-ը, որոշեցին, որ սա է այն անցողական տիպարը, որ կապում է մարդուն մարդանման կապկի հետ։ Սա աւելի մօտ նախահայրն է։

Բայց ուրիշ գիւտերը (մի փոքր յետոյ կը թուենք) ցոյց են տալիս, որ pithecantropus-ի հետ միաժամանակ, միևնոյն շրջանում, դեռ աւելի վաղ ժամանակները, ապրում էր հիւսիսում մի այլ էակ, իր արտաքինով, յատկութիւններով աւելի մարդանման քան pithecantropus-ը։

Այդպիսի զուգադիպութիւնը շատ հեռացրեց pithecantropus-ը մարդուց։

Նորանոր պեղումները ուրիշ լոյսի տակ պատկերացրին մեզ մարդու մօտակայ և հեռաւոր նախահայրերի բնոյթը։

Մարդու նախահօրը այլ ևս չէին փնտռում մարդանման կապիկների մէջ։ Հետախուզութիւնների նոր ասպարէզ էր բացուել. փոխուեց և ժամանակակից մարդանման կապիկների բնոյթը, նրանց ծագման հարցը։ Pithecantropus erectus-ի տեղն էլ փոխուեց։

Ենթադրութիւն կայ, որ մարդը առաջ է գալիս ոչ թէ անհետացած մարդանման կապիկներից, այլ նա և կապիկները բղխում են մի ընդհանուր՝ ուրիշ աղբիւրից։ Երկուսն էլ տարբեր ճիւղեր են միևնոյն ծառի։ Մնում էր որոշել այդ ընդհանուր աղբիւրի բնոյթը և ըստ հնարաւորին ուսումնասիրել, թէ ինչպիսի ուղիներով են զարգացել երկու տարբեր ճիւղերը։

Այստեղ նորից օգնութեան է գալիս սաղմնաբանութիւնը։

Գիտական հետախուզութիւններից յայտնի է, որ մարդանման կապիկները շատ մատաղ հասակում աւելի քիչ կապկային յատկութիւններ ունեն, քան հասակ առած ժամանակ։ Մատաղ հասակում քիչ են նմանվում իրանց ծնողներին և շատ նման են լինում մարդկային փոքրիկ երեխաներին։ Մի քանի մարդանման կապիկների ձագերը աւելի մարդանման են, քան նրանց ծնողները։ Երբ սկսում են մեծանալ, հետզհետէ կորցնում են մարդկային բնոյթը, նրանց մէջ սկսում են գերակշռել կապկային յատկութիւնները։ Յայտնի գիտնականների հետախուզութիւնները հաստատել էին այդ ֆակտը։

Այդ իրողութիւնից մի բան կարելի է հետևցնել։ Յիշենք կենսածնական հիմնական օրէնքը, այն է՝ իւրաքանչիւր կենդանական սաղմ, իր զարգացման ընթացքում, կարճառօտ կերպով

կրկնում է իր տոհմի զարգացումը։ Սաղմի զարգացման ընթացքում մեր առաջ անցնում են ոչ լիովին նրա նախահայրերի ուրուագծերը։

Մարդանման կապկի սաղմը, ձագը, ինչպէս փաստն է ցոյց տալիս, շատ նման է մարդուն։ Չէ՞ ապացուցում այդ իրողութիւնը այն, որ կապիկների նախահայրը աւելի մարդանման է եղել։

Յետագայ փաստերը արդարացնում են այդ ենթադրութիւնը։

Ո՞վ է pithecantropus-ը։ Քիչ առաջ ասացինք, որ ենթադրում էին, թէ դա մի անցողական տիպար է, մարդու և մարդանման կապիկների միջև, բայց լուրջ ուսումնասիրութիւնը ցոյց տուեց հակառակը։ Գիտնականները, ինչպէս տեսանք, վերագրում էին նրան սառցային շրջանին։ Pithecantropus-ը մի տիպար է, որ հետզհետէ կապկային ընտանիք է առաջացնում։ Նրա մի քանի մարդկային յատկութիւնները ցոյց են տալիս, որ pithecantropus-ի նախահայրը եղել է մի մարդանման էակ, ինչպէս ենթադրում են, ընդհանուր նախահայրը մարդու և կապիկների։ Կորցնելով, շնորհիւ որոշ պայմանների, մարդկային յատկութիւնները՝ pithecantropus-ը տալիս է կապիկների սկիզբը։

Անմիջապէս մարդու հետ կապուել pithecantropus-ը չէ կարող։ Մարդկային ցեղի նախահայրն է pithecantropus-ի հիւսիսային ժամանակակիցը, աւելի մարդանման և քաղաքակրթութեան որոշ սաղմերով։ Նա գիտէր կրակի գործածելը։

Այդ նախահօր մնացորդներից շատ են գտնուել։ Առաջին անգամ գտնուեց գանգը Դիւսէլդորֆի մօտ, Նեանդեր գետի հովտում։ Այսպէս էր նա. չը կար մարդկային լայն ճակատ, մասսիվ ծնօտներ։ Կզակի բարձրութիւնը շատ թոյլ էր նշմարւում, համարեա բացակայում էր (այդ յատկութիւնը, ինչպէս ոմանք ենթադրում են, ցոյց է տալիս, որ խօսելու ընդունակութիւնը ամենաստորին աստիճաններում էր գտնւում)։ Ունքոսկրները խոշոր են, դէմքի ոսկրները ուղղուած առաջ՝ միասին դունչի ձև են ստանում։

Ոմանք գիտնականներից պնդում էին, որ այդ՝ մարդու նախահօր գանգն է։ Ոմանք էլ ժխտում էին այդ ենթադրութիւնը։ Առաջինը Վիրխովը յայտնեց, որ այդ գանգը նօրմալ չէ. նրա փոփոխուած տարօրինակ ձևերը հիւանդական երևոյթներ են, հիւանդութեան հետևանք։

Յետագայում գտնուած նոյնանման տիպարի մնացորդները հաստատեցին առաջինների ենթադրութիւնը։

1886 թուին Սպիում (Բելգիա) գտնուեց մի ամբողջ կը-

մախք՝ նման նեանդերտալեան տիպարին։ 1889 թ. Կրապինայում (Աւստրիա) հողային շերտերից դուրս հանեցին մի քանի կմախքներ՝ դարձեալ նոյն տիպի։

Այդ նոր գիւտերից յետոյ ոչ ոք չէր կասկածում, որ հիւանդական երեւոյթները ոչ մի դեր չեն խաղացել։ Բոլոր ձեւական փոփոխութիւնները բնական էին։ Թէ Նեանդերտալի գանգը, թէ միւս տեղերում գտնուած կմախքները պատկանում են մարդու նախնիքներին։ Իսկ որովհետեւ այդ նախնական մարդու առաջին մնացորդը՝ գանգը գտան Նեանդեր գետի հովտում, այդ պատճառով նրան անուանեցին նեանդերտալեան մարդ։

Պեղումները շարունակվում էին։ Վերջին նշանաւոր գիւտերը եղան Ֆրանսիայում։ Նորանոր օրինակները բաց էին անում մեր առաջ այն ուղին, որ ձգուած է մարդուց մինչև նրա և կապկի ընդհանուր նախահայրը։

Le Moustier այրում 1908 թուին գտնվում է մի նոր գանգ նեանդերտալեան տիպի, բայց փոքր տարբերութեամբ։ Բիչ է զարգացած գանգը. կզակի դուրս ցցուած մասը բոլորովին բացակայում է։ Լայն քիթ, ստորին ծնօտը նեղ, վերինը՝ մասսիվ, բայց աւելի առաջ ընկած։ Դունչը աւելի կտրուկ է արտայայտուած։

Le Moustier-ի նեանդերտալեան տիպարը աւելի հին ժամանակների է, քան իսկական նեանդերտալեանը։

Նոյն 1908 թ. Բուիսօննի և Բարդ գտնում են մի ուրիշ կմախք (Chapelle de Saints այրում) նման Մուստիէրում գտնուած տիպարին։

Մանաւանդ հետաքրքրական են 1909 թ. Կապիտանի և Պէյրօնիի պեղումները Բուգի մօտ (Դօրդօնի դեպարտամենտ)։ Գտնուած կմախքը նման է Moustier-ի կմախքին։ Կմախքը գտել էին կիսանստած դրութեան մէջ, ամփոփուած հողի շերտերում։ Ոտքերը քիչ ծալած, ձախ ձեռքը ընկած էր կողքին իրանի երկարութեամբ, իսկ աջը թեթև բարձրացած և քիչ ծալած։ Բերանը բաց էր մնացել։ Ըստ երեւոյթին՝ տրագիքական մահն էր վերջ տուել նրա կեանքին։

Նեանդերտալեան մարդու մնացորդների հետ միաժամանակ նոյն շերտերում գտնվում էին մնացորդներ թէ կենդանիների և թէ այլ իրերի։ Գտնուել են ոսկրներ հիւսիսային եղջերուի, բիզօնի ատամներ, կայծքարից շատ հասարակ պատրաստած գործիքներ, նետի ծայրեր, ոսկրային ասեղներ, այրուած ոսկրներ։

Նեանդերտալեան տիպարը իր կազմուածքով անպայման

մօտ է մարդուն։ Նա ապրում էր նոյնպէս սառցային շրջանում, միաժամանակ pithecantropus-ի հետ և վերջինից աւելի բարձր էր կանգնած, մանաւանդ իր քաղաքակրթութեան կողմից։

Դեռ նեանդերտալեան մարդու վերջին գիւտերից առաջ՝ 1907 թ. Հէյդելբէրգի մօտ (Գերմանիա) Շետենզակը գտաւ ինչ-որ անյայտ էակի ծնօտ։ Ծնօտը նման է մարդանման կապիկների ծնօտներին, բայց միևնոյն ժամանակ մի խոշոր յատկութիւն մօտեցնում է նրան մարդկային ծնօտին։

Գտնուած էր նա շատ հին շերտերում, այն է՝ երրորդական շրջանին պատկանող։ Իբրև ապացոյց եղան նոյն շերտերում գտնուած մի քանի կենդանիների մնացորդները, ինչպէս օրինակ՝ հնադարեան փիղ, ստենօնեան ձի, էտրուսեան ռնգեղջիւր, կակղամորթերի խեցիներ։ Երրորդական շրջանի կենդանիներ են դրանք։ Յիշեալ կակղամորթերի ձևերը յատուկ են երրորդական շրջանի վաղ ժամանակներին։ Յետագայ՝ չորրորդական շրջանում այլ ևս չկան այդպիսի տեսակներ։

Այդպէս ուրեմն՝ հէյդելբէրգեան ծնօտը շատ հին է նեանդերտալեան մարդուց։ Աւելի ևս մասսիվ ու լայն ծնօտը հեռանում է մարդու ծնօտներից, շատ մօտենում կապկայիններին, մանաւանդ գորիլլայի ծնօտին, բայց քիչ սրանից կարճ։ Կզակը բոլորովին հարթ է։

Զարմանալին նա է, որ այդ կապկային ծնօտի մէջ եղած ատամները շատ եւ շատ նման են մարդու ատամներին։

Այդ էակին անուանում են հէյդէլբէրեան մարդ։

Նոր գիւտերը կը պարզեն նրա միւս յատկութիւնները ևս։

Ենթադրում են ոմանք, որ հէյդելբէրգեան մարդը կարող է լինել մարդու և կապիկների նախահայրը։ Դա է այն աղբիւրը, որ երկու մասի բաժանուեց. մէկը հոսել է դէպի մարդկային ցեղը, իսկ միւսը՝ կապկային։

Տակաւին այդ ենթադրութիւն է, բայց հաւանական ենթադրութիւն։

Այդ զարգացման պրօցէսսը այսպէս են ներկայացնում։ Երրորդական դարաշրջանում, սառցային շրջաններից առաջ, ապրում էր մի ընդհանուր նախահայր մարդանման, նմանապէս և կապկային յատկութիւններով։ Առայժմ այդ տիպարին մօտենում է հէյդելբէրգեան մարդը։

Երբ հիւսիսից սկսեցին իջնել վիթխարի սառցակոյտերը, այդ նախնական տիպարը, ըստ երևոյթին, բաժանուել էր երկու մասի։ Մէկ ճիւղը չդիմանալով ցրտերին չուեց հարաւային երկիրները։ Հարաւում նրան շրջապատող նոր պայմանները փո-

խեցին նրա կեանքի բնոյթը, սկսեցին փոփոխել նրա կազմուածքը։ Այդ ճիւղը հեռանալով իր նախնական տիպարից՝ նոր պայմաններում սկսեց յատուկ ուղղութեամբ զարգանալ։ Այդ զարգացման ուղին հասցրեց նրան դէպի կապկային դրութիւնը։ Եաւայում գտնուած pithecantropus-ը՝ հարաւային կողմերը անցած հէյդելբէրգեան մարդն է, արդէն փոփոխուած։ Նա հասել է կիսակապկային դրութեան։ Pithecantropus-ից յետագայում առաջանում են մարդանման կապիկները, որոնք, ինչպէս յայտնի է, ապրում են միմիայն հարաւային երկիրներում։

Հէյդելբէրգեան մարդուց սկսուող միւս ճիւղը անցնում է այն ուղին, որ գնում է մինչև մարդը։

Հէնց սառցային շրջանը գալիս է թէ չէ, այդ գրուպպան սկսում է դանդաղ առաջ գնալ։ Հեռու հարաւի խորքերը նա չէ անցնում. աւելի նպատակայարմար է գտնում, որքան հնարաւոր է, համակերպուել նոր, փոփոխուող պայմաններին։

Եւ արդարև, հէյդելբէրգեան մարդուց յետոյ գալիս է նեանդերտալեան մարդը (Moustier-ի տիպարը), այնուհետև նեանդերտալեանը (Նեանդերտալի)։ Նեանդերտալեան մարդը ապրում էր սառցային շրջանում։ Սառցակոյտերից նա չէր հեռացել այնքան հեռու, որքան pithecantropus-ը։ Նա ապրում էր հիւսիսային կողմերը (մանաւանդ Ֆրանսիայում), ուր սառնամանիքը և ցուրտը գործում էին անընդհատ։

Նեանդերտալեան մարդը նախկին հէյդելբէրգեան մարդն է, որ չգնալով հարաւի խորքերը սկսել էր համակերպել նոր պայմաններին։ Նոր պայմանները որոշ փոփոխութիւններ են առաջացրել նրա կազմուածքի մէջ։

Նեանդերտալեան մարդը կարողացել էր դիմանալ ցրտերին։ Կրակի գիւտը մանաւանդ թոյլ էր տալիս նրան պաշտպանուելու դաժան ցրտերից։ Կայծքարից գործիքներ էին պատրաստում կենդանիների դէմ կռուելու և նրանց որսալու համար։ Պատրաստում էր նա ոսկրից ասեղներ։ Ցուրտը հագուստի անհրաժեշտութիւնն էր առաջ բերել, և ահա նա իր որսացած կենդանիների մորթերից հագնելիք էր կարում։

Առայժմ նեանդերտալեան մարդու մնացորդները գտնուել են միմիայն հիւսիսում։

Նեանդերտալեան մարդուց առաջ է գալիս նախնական մարդը, ապա ուրեմն մարդկային ցեղը։

Հետաքրքրական են նեանդերտալեան տիպարի և մարդու գանգային խոռոչների ծաւալի թուերը։

| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| Ժամանակակից եւրոպացու միջին թուով | | | 1558 | խորան.-սանտ. | |
| Վեդդասի | » | » | 1220 | » | » |
| Նեանդերտալեան մարդու | » | » | 1200 | » | » |
| Pithecantropus ի | » | » | 880 | » | » |
| Գորիլլայի | » | » | 520 | » | » |

(Елачичъ, «Крайній сѣверъ, какъ родина человѣка»).

Այս թուերից երեւում է, որ նեանդերտալեանը մօտ է մարդկային ցեղին (Վեդդաս, եւրոպացի), այն ինչ pithecantropus-ը՝ գորիլլային, կապկային ցեղին։

Ի հարկէ, չգտնուած շատ անցողական ձեւեր կը լինեն հէյդելբէրգեան մարդու թէ առաջին և թէ երկրորդ ճիւղի զարգացման ուղղութեամբ։ Բայց և այնպէս փաստ է, որ մարդու մօտակայ նախահայրն է նեանդերտալեան տիպարը և ոչ pithecantropus-ը։

Ահա եղած գլխաւոր գիւտերը, որոնք թէև ոչ լիապէս, այնուամենայնիւ զգալի չափով լոյս սփռեցին մարդու մօտակայ նախահայրերի հարցի վրայ։

## III.

Այժմ անցնենք մարդու սկզբնական հայրենիքի հարցին։

Մենք գլխաւորապէս կանգ կառնենք մի ուսումնասիրութեան վրայ։

Երբ փաստերը ապացուցեցին, որ մարդու և մարդանման կապիկների միջև գոյութիւն ունեն ազգակցական կապեր, ենթադրեցին, որ մարդու հայրենիքը պիտի լինի Աֆրիկայում։ Այդտեղ են բնակվում մարդանման կապիկները, հետևաբար մարդն էլ այդտեղից է ծագում առել։ Ոմանք էլ հայրենիքը համարում էին Հնդկաստանը, ուր բնակվում է գիբբոնը՝ մարդանման կապիկներից, ինչպէս ենթադրում էին, մարդուն ամենամօտ տեսակը։

Երբ Դիւբուան գտաւ իր pithecantropus erectus-ը, որին մարդու նախահայր կարծեցին, հայրենիքի տեղը Աֆրիկայից անցաւ Եաւա կղզին։

Մի խօսքով՝ սկիզբներում սկզբնական հայրենիքի տեղը ընդհանրապէս փնտռում էին հարաւում։

Բայց, ինչպէս պարզուեց, մարդու նախահայրը ոչ մարդա-

նման կապիկների մէջ է և ոչ էլ pithecantropus-ը, հետևաբար առիթ չկայ նրանց բնակավայրերը մարդու սկզբնական հայրենիքը համարելու։

Նէանդերտալեան մարդու մնացորդները աւելի ևս հայրենիքը տեղափոխեցին հիւսիսային կողմերը։

Հիմա ընդհանուր կարծիք է, որ մարդու սկզբնական հայրենիքը եղել է հիւսիսում իսկ թէ հիւսիսային ո՞ր կողմերը, այդ տակաւին պարզ չէ։

Տարբեր ուսումնասիրութիւնները այս կամ այն տեղն են համարում նախամարդու հայրենիքը։ Գլխաւոր հայեացքը դարձած էր Եւրոպային։ Մենք այստեղ մտադիր ենք կանգ առնել մի ենթադրութեան վրայ, որը սկզբնական հայրենիքի տեղը որոնում է ծայրայեղ հիւսիսում։ Այդպէս է մտածում հնդկական մի գիտնական՝ Տիլաքը։

Վերջերս լոյս տեսած Ելաչիչի*) մի գրքոյկում մանրամասնօրէն բերուած են կտորներ Տիլաքի ուսումնասիրութիւնից։

Մինչև Տիլաքի ուսումնասիրութիւնը՝ յայտնի էր մարդկային ցեղի սկզբնական հայրենիքի հիւսիսային հիպօթէզը։ Դիմելով հնդկական Վեդայի սրբազան գրքերի գիտական ուսումնասիրութեանը, նա աւելի ևս հաստատում է, որ հիւսիսն է նախամարդու հայրենիքը և այն էլ՝ ծայրայեղ հիւսիսը։

Թէ որքան արդարացի է նա, այդ՝ օրինակները կը պարզեն։

Վեդայի գրքերում ժողովուած են հնդկական օրհներգները, առասպելների նկարագրութիւնները և այլ կրօնական կտորներ։

Նախ կարծում էին, թէ Վեդան կազմուած է եղել 1000 տ. Յ. ծ. առաջ. յետոյ ենթադրեցին, որ նա աւելի հին է, այն է՝ 2000 տարի Յ. ծ. առաջ. ապա այդ թիւն էլ ճշգրիտ չհամարուեց։

Տիլաքը Վեդայի հնութիւնը որոշում է գրքերում հանդիպած մի քանի աստղաբաշխական օրինակներով։ Գրքում խօսվում է Բևեռային Աստղի մասին։ Այժմեան Բևեռային Աստղը, որ Փոքր Արջի համաստեղծութեան աստղերից մինն է, այնքան էլ հին ծագում չունի։ Վեդայի յիշած Բևեռ. Աստղի դիրքում եղել է Վիշապ (Դրակօն) համաստեղութեան α աստղը, 2500—3000 տարի Յ. ծն. առաջ։ Մի ուրիշ ֆակտ ևս աւելի է մեծացնում Վեդայի տարիքը։ «Վեդայում ասուած է. Իւպիտէր մոլորակը (հնդկերէն Բրախասպատի) երևում էր այն ժամանակ, երբ

*) Елачичъ, «Крайній сѣверъ какъ родина человѣка», գլ. II.

նրանով համարեա ծածկվում էր Տիօխիու աստղը։ Աստղաբաշխների հաշուով, այդ երևոյթը նկատվում էր երկրից Ք. ծն. 4000—5000 տարի առաջ։ (Елачичъ, «Кр. сѣв.»)։

Համարեա հաւասար հնութիւն ունէր նաև պարսկական սրբազան Աւեստա գիրքը։

Ցիշեալ սրբազան գրքերի հնութիւնը հնարաւորութիւն է տալիս ծանօթանալու մարդկային ցեղի սկզբնական հայրենիքի հետ։

Շատ անորոշ, ֆանտաստիքական կտորներ կային Վեդայի գրքերում, բայց երբ Տիլաքը դիմեց իր հետազօտութիւններին, նա բացատրեց գիտականօրէն, պարզ կերպով այնպիսի կտորներ, որոնք մինչև նրա ուսումնասիրութիւնները ծածկուած էին անյայտութեան քօղով։

Բևեռային Աստղը, ըստ Վեդայի, գտնվում էր երկնակամարի ամենաբարձր կէտում, մարդկանց գլուխների վերը։ Եւ աստղերը բոլորի աչքի առաջ շրջան էին գործում երկնքում։

Հարաւային կողմերում Բևեռային Աստղը յիշեալ դիրքից աւելի ներքև է գտնվում։ Հասարակածի բնակիչներին նա երևում է անմիջապէս հօրիզօնի վրայ։

Միմիայն բևեռային երկրում է երևում աստղերի շարժման լիակատար շրջանը։

Կան աւելի բնորոշ փակտեր, որոնք ապացուցում են, որ Վեդայի բովանդակութեան աղբիւրը անշուշտ եղել է ծայրայեղ հիւսիսում։ Ահա՝ օրինակ՝ օրերի նկարագրութիւնը։ «Մերայում (աստուածների բնակավայրը) աստուածները տարէնը մի անգամ են տեսնում արևը ծագելիս». «մարդկային տարին—այդ՝ աստուածների օր ու գիշերն է». «ով որ ապրում է այնտեղ, նրա համար օր ու գիշերը մի ամբողջ տարի է»։ «Մերայում արևն ու լուսինը պտոյտ են գործում ձախ կողմից դէպի աջ, այդպէս են անում և աստղերը»։ (Елачичъ. «Кр. сѣв.»)։

Այդ երևոյթները յիշեցնում են ծայրայեղ հիւսիսը։

Հետաքրքրական են նաև Վեդայի չափ հին՝ պարսկական Աւեստա սրբազան գրքի մի քանի նոյնանման տողերը։ Աստուած Ահուրամազդան մարդկանց համար հայրենիք էր ստեղծել. «այնտեղ արևը, լուսինը և աստղերը տարէնը մի անգամ ծագում են, մի անգամ էլ մայր մտնում». «այնտեղ տարին մէկ օր ու գիշեր է»։ (Елачичъ, նոյն)։

Հարաւային բնակիչը այդօրինակ երևոյթների ականատես լինել չէ կարող։ Նման «տարիներ» տեսնում են բևեռային կամ ծայրայեղ հիւսիսային երկրի բնակիչները։

Այնտեղ երկարատև է ինչպէս ցերեկը, նոյնպէս և գիշերը։ Տևողական խաւարին յաջորդում է տևողական լոյսը։ Այժմ հասկանալի է, թէ ինչու տարին մէկ օր (այն է՝ տևողական ցերեկ) և մէկ գիշեր է (այն է՝ տևողական խաւարը)։

Եւ ահա երբ հասնում է խաւարի տիրապետութեան վերջը, դանդաղ, մեղմաբար սկսում են յայտնուել լուսաբացի առաջին նշոյլները։ Երկար է տևում անցողական ժամանակը, մինչև որ յայտնվում է արևածագը։ Հարաւային երկիրներում արշալոյսի յայտնութեան պրօցեսը այդքան երկար չէ տևում։ Ծայրայեղ հիւսիսի լուսածագն է այդպէս։ Ահա մի նկարագրութիւն. «Յիրաւի անցնում էին շատ օրեր, որոնց ընթացքում մինչև արևածագը, ո՜, դու լուսածագ, երևում էիր մեզ»։ «Շատ լուսածագեր դեռ չեն լուսացել լիովին, ո՜, Վարունա, թոյլ տուր լուսածագը մինչև լոյսը ապրենք»։ (Елачичъ, նոյն)։

Լուսածագի ժամանակամիջոցի բնոյթը ևս նկարագրուած է. «Կար ժամանակ, երբ այդ բոլորը ոչ ցերեկ էր և ոչ գիշեր»։ (Նոյն տեղ)։

Վեդայի մի ուրիշ գրքում ասուած է. լուսածագերը 30 քոյրեր են։ «Արշալոյսի աստուածուհին 30 քայլ է անում»։ Տիլաքը բացատրում է և այս մութ կտորը։ Բևեռում լուսածագի ժամանակամիջոցը հաւասար է 50 օրուայ, իսկ փոքր ինչ հարաւ՝ ծայրայեղ հիւսիսում 30 օրուայ։

Հետևեալ կտորները շատ բնորոշ կերպով պատկերացնում են հիւսիսային օրերը։ «Օ, խղճացէք, Ադիդի, Վարունա և Միտրա՛, եթէ մեղաւոր ենք մենք ձեր առաջ։ Ինդրա՛, ազատիր մեզ երկիւղը փարատող լոյսի համար, պաշտպանիր մեզ բոլորիս երկարատև խաւարից»։ (Елачичъ, նոյն)։

Գալիս է մթութեան վերջը.

«Արդէն վառվում է կրակը. խաւարի վերջն է երևում։ Եւ արշալոյսի դրօշը երևաց երկնքի վրայ»։ (Նոյն)։

Վերջապէս յայտնվում է երկար տենչացուած լոյսը, փարատվում է խաւարը։ Դանդաղ լուսածագից յետոյ յայտնվում է փայլուն արևը, մարդկանց սիրտը ուրախութեամբ լցնում։

Ելաչիչի յիշեալ գրքում շատ ֆակտեր կան Տիլաքի ուսումնասիրութեան վերաբերեալ։ Բերենք երկու բնորոշ ֆակտեր ևս։ «Աստուած Վարունան երկնքում կարծես ճօճանակի վրայ ճօճում էր արեգակը»։ Մի ուրիշ տեղ ասվում է, թէ ինչպէս արևի աստուածը կանգնեցնում է կառքը երկնքի մէջտեղը և նորից յետ դառնում նախկին ճանապարհով։ Տիլաքը բացատրում է և այդ կտորները։ «Բևեռի մօտ դժուար չէ տեսնել, թէ

ինչպէս արևը՝ իջնելով հորիզոնից որոշ բարձրութեան վրայ՝ կանգ է առնում և ապա նորից գնում յետ. այդ երևոյթը ըստ մեր օրացոյցի տեղի է ունենում յուլիսի 9-ին։ (Елачичъ. «Крайній сѣв.»)։ Այդ երևոյթի կրկնուելը կարող է այնպիսի տպաւորութիւն թողնել, թէ կարծես արևը ճօճանակի վրայ գալիս ու գնում է։

Բաւականանանք այսքանով։ Ֆակտեր շատ կան, թերևս աւելի հետաքրքրական ու բնորոշ. մենք մատնացոյց ենք անում Ելաչիչի յիշեալ գիրքը։

Վեդա և Աւեստա գրքերի բովանդակութիւնը նորանոր ֆակտերով գալիս ու ապացուցում է մարդկութեան հիւսիսային ծագման հիպօթէզի հաւանականութիւնը։ Նոյն իսկ սկզբնական հայրենիքի հարցը նոր ուղղութիւն է ստանում, այն է նա տեղափոխվում է ծայրայեղ հիւսիսը։

Նոր ֆակտերը, աւելի հին, քան Վեդայի և Աւեստայի ֆակտերը, կը պարզեն այդ ենթադրութիւնը։

Նոր հետազօտութիւնները կը տան այդ բացատրութեանը դրական կամ բացասական պատասխան։

Ռ. ԳԱԲ.-ԵԱՆ

---

ՎՐԻՊԱԿ.—Յօդուածիս առաջին գլխում, տպուած «Արօրի» № 1-ում, սպրդել են հետևեալ սխալները.

Երես 92, տող 11 վերևից. գրուած է՝ «Բայց միացած մի ոսկրի մէջ»...», պէտք է լինէր «բայց երկուսը նրանցից միացած» և այլն։

Երես 96. «Նախ և առաջ կոյր աղիքը»... Հարկաւոր էր փոքրիկ ծանօթութիւն սխալ չհասկանալու համար։ Ծանօթութիւն. «Յօդուածում կոյր աղիքի տակ հասկացվում է կոյր աղիքի որդանման ճիւղը» (червеобразный отростокъ, слѣпой придатокъ слѣпой кишки).

# ԼԵԶՈՒՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

---

*Լեզուն մի միստիկական ներշնչում չէ մեր մէջ, այլ մի բացատրելի ֆիզիկօ-ֆիզիօլօգիական պրօցեսս, որի միջոցով մենք այժմ այնքան աջող կերպով արտայայտում ենք մեր մըտքերը, ցանկութիւնները և զգացմունքները։*

*Այդ պրօցեսսի ամբողջ գաղտնիքը կայանում է մեր բերանի մի որոշ մասի տատանման և նրա միւս մասերի որոշ ձևեր ստանալու մէջ։ Երբ մենք խօսում ենք, մենք իսկապէս տատանման մէջ ենք բերում մեր ձայնական կնճիռները* (chordae vocales), *որոնք գտնվում են մեր կոկորդի* (larynx) *կէսից մի քիչ բարձր և նման են, այլաբանօրէն ասած, թմբուկի պատուած թաղանթի։ Ձայնական կնճիռների տատանումներից անմիջապէս ցնցվում են նրանց կից օդի մասնիկները և առաջ են գալիս* օդային ալիքներ, *որոնք կաշկանդուելով մեր բերանի, շրթունքների և նոյն իսկ քթի յայտնի դրութիւնների մէջ և, հետևաբար, փոփոխուելով իրանց սկզբնական կօնուսաձև հօսանքի մէջ, հաղորդվում են մեր ականջներին և այնտեղ՝ նորից վերափոփոխուելով ուրիշ նոր տատանումների՝ առաջ բերում, արտադրում այս կամ այն ձայները։ «Երբ մենք խօսում ենք, —ասում է Մաքս Միւլլերը,—մենք իսկապէս, կասէք, խաղում-ածում ենք մի մուզիկական ինստրումենտի վրայ, բայց աւելի կատարելագործուած, քան մինչև այսօր աջողուել է հնարել մարդուն. ըստ որում, ածող մասի դերը կատարում են մեր ձայնական կնճիռները, իսկ խաղովակի դերը—մեր բերանը՝ նրա ընդունած զանազան դրութիւններով»։*

*Ֆիզիկայից յայտնի է, որ ամենաթոյլ ձայնը, որը լսելի է մեր ականջներին, տեղի է ունենում միայն այն ժամանակ, երբ այս կամ այն շարժուող առարկան տատանվում է մի վայրկեանի մէջ 32 անգամ. այդ ձայնը համապատասխանում է ցածր* do-*ին մուզիկայի մէջ. իսկ բարձր* si *տօնին համապատասխանում է արդէն մօտ 4000 տատանում նոյնպէս մի վայրկեանի մէջ։ Այդ*

սահմանների մէջ ամփոփվում են մուզիկական գամմայի բոլոր տոները. բայց կան ձայներ, որոնք առաջ են գալիս և 3800 տատանումից մի վայրկեանի մէջ՝ այդ ժամանակ լսվում է միմիայն ճիչ։ Հետաքրքրական է երևակայել, թէ ինչպիսի մրրիկ, փոթորիկ է յարուցվում օդի մէջ ամեն անգամ, երբ մենք արտասանում ենք այս կամ այն բառը, որը ոչ այլ ինչ է, եթէ ոչ կոմբինացիա զանազան ձայների։

«Երբ մեր թոքերից՝ մեր կրծքի վանդակի ճնշման տակ՝ դուրս է հրվում օդի հոսանքը, այդ ժամանակ մեր բերանը ստանում է խողովակի ձև, որի միջոցով՝ ինչպէս կլարնէտի՝ նա անցնում է հասնելու համար արտաքին օդին։ Շունչը՝ անցնելով վերև յիշուած ձայնական կնճիռների միջով՝ ստիպում է տատանուել պարբերաբար, և այդ առաձգական թաղանթի տատանումներից պայմանաւորվում են թէ մեր ձայների բարձրութիւնը, ուժգնութիւնը, տեմբրը և թէ նրանց այն կոմբինացիան, որը մենք անուանում ենք խօսք՝ բառ, վանկ, տառ։ Ու հնչիւնը արտաբերելու համար, օրինակ, մենք կոլորում ենք մեր շրթունքները և ցածրացնում մեր լեզուն, այնպէս որ մեր բերանը ստանում է շիշի ձև՝ կտրուած իր պարանոցից։ Երբ արտասանում ենք օ հնչիւնը, մենք մի քիչ բանում ենք մեր շրթունքները և բարձրացնում մի քիչ մեր լեզուն։ Ա հնչիւնը արտայայտելու համար մենք բանում ենք լայն մեր բերանը՝ թողնելով լեզուն իր նախկին ցածր դրութեան մէջ, և այլն։ Նոյնը պիտի ասել և բաղաձայն հնչիւնների մասին։ Այդպիսով, հնչիւնները (տառերը), խօսքը (բառերը) ոչ այլ ինչ են, եթէ ոչ մի հասարակ, այժմ խիստ բացատրելի ֆիզիկօ-ֆիզիօլոգիական պրօցեսս, որը կատարվում է մեր կամքի ճնշողութեան տակ և որտեղ մասնակցում են ձայնական կապոցները, լեզուն, շրթունքները, ատամները և բերանի միւս մասերը»։

«Այդ բոլոր թէօրիական դիտողութիւնները ամրապնդելու և զանազան անհեթեթ կարծիքները՝ լեզուների էութեան մասին՝ փարատելու համար, գերմանացի Հելմհօլցը, որը՝ իբրև ֆիզիկոս՝ մի ընդունուած մեծ հեղինակութիւն է, վերցնում է մի շարք կամերտոններ, կցում է նրանց զանազան տեսակի րէզօնատորներ (ձայներ ուժեղացնող մեքենայ), յարմարեցնելով նրանց, ի հարկէ, յայտնի կերպով, և, ապա, բաց թողնելով նրանց միջով գալվանական մարտկոցի հոսանքը (էլեկտրականութիւն), աջողում է ստանալ բոլոր ձայնաւոր հնչիւնները։ Եւ ա հնչիւնը համապատասխանում է, Հելմհօլցի կարծիքով, F տոնին, o-B' (moll), a-B'' (moll)-ին, և այլն»։

Իրաւացի է Մաքս Միւլլէրի բացագանչիւնը. «Ամեն կողմից,—ասում է նա,—մենք շրջապատուած ենք, այո, հրաշքներով, բայց այնպիսի հրաշքներով, որոնք գերազանցում են մեր մինչև այսօր լսածները. և այդ հրաշքները,—իւմօրով եզրափակում է նա,—որ ամենից օտարոտին է, ենթարկվում են օրէնքների և ամենաճիշտ մատեմատիկական բացատրութիւնների»։

Ինչպէս որ անկարելի է միանգամից սկսել նուագել դաշնամուրի վրայ կամ սկսել գրել ու կարդալ, այնպէս էլ անկարելի է ենթադրել, որ նախկին մարդը, որ աւելի կոպիտ և անկիրթ էր մեզանից, կարողանար առաջին անգամից արտայայտել իր մտքերը ամբողջ նախադասութիւններով կամ թէ ամբողջ բառերով, առանց նախապէս անցնելու այդ աշխատանքի սկզբնական աստիճանները. սա մի ֆիզիոլոգիական երևոյթ է, որ մեր մարմնի մկանունքները կամ ներվերը ընտելանում են մի յայտնի գործակատարութեան աստիճանաբար, անցնելով հետևողաբար հասարակ վարժողութիւններից դէպի աւելի բարդագրեալները։ Եթէ միւս կողմից ի նկատի ունենանք, որ նախնական մարդը գտնվում էր վերին աստիճանի մտաւոր և հոգեկան ստոր զարգացման վրայ, այնպէս որ մի առանձին կարիք էլ չկար ամբողջ բառերի կամ նախադասութիւնների, թարգմանելու նրա շատ թոյլ, աղքատ մտքերը կամ զգացմունքները,—մենք մեծ հեշտութեամբ կարող ենք հաւանական գտնել այն դրութիւնը, որ այդ նախնական մարդը պիտի խօսէր կամ կարող էր խօսել միայնակ ամենապարզ ձայնարկութիւններով... Կան ֆակտական ակնարկութիւններ, բայց աւելի հաւանական և հասկանալի է թէօրիապէս, որ այդ նախնական մարդու լեզուն նախ պիտի բաղկացած լինէր ձայնաւոր բացագանչութիւններից և ապա բաղաձայն։ Ձայնաւոր հնչիւնները—ա, օ, ու և այլն—արտասանելու ժամանակ մեր շունչը անցնում է մեր բերանի միջով գրեթէ ազատ, առանց կաշկանդուելու, բայց բաղաձայն հնչիւններն արտասանելու համար մենք պէտք է յայտնի կերպով փոփոխենք մեր խօսելու ապարատի զանազան մասերը՝ նրանց նոր դրութիւններ տալով, որը, իբրև շատ թէ քիչ բաղադրեալ աշխատանք, պահանջում է մեզնից տևողական վարժողութիւն։ Օրինակ, դ հնչիւնը արտասանելու ժամանակ մենք մեր լեզուն պիտի յայտնի կերպով աշխատենք շփել մեր ատամներին, բերանի վերին մասերին և այլն, իսկ դրան ընտելանալու համար հարկաւոր է ճիգ, փորձ, հմտութիւն։ Մեր օրերով դա մեզ համար մի քիչ դժուար հասկանալի է, երբ մենք արդէն մեծ հեշտութեամբ գիտենք արտաբերել ձ, ծ, ղ, ճ և այլ հնչիւնները,

բայց հարկաւոր է դիմել ֆակտերին, զանազան ազգերի արտասանութեան ձևերին, և մենք կարող ենք հաստատել այդ դրութեան իրաւացիութեան հետ։ Կայ մօկաւ՚ա ասուած ազգ, որը մինչև այսօր չէ կարողանում արտասանել այնպիսի, ըստ երևոյթին, հասարակ հնչիւններ, ինչպէս բ, վ, մ, պ, փ և այլն, որովհետև նա չէ կարողանում հուպ տալ կամ յայտնի ուժգնութեամբ շփել իրար իր շրթունքները։ Մինչև այսօր չինացիները չկարողացան սովորել արտասանել Եւրոպա, Ամերիկա, այլ միշտ ասում են Եւլօպա, Լամերիկա։ Ընկերութեան կղզիների բնակիչները չգիտեն արտասանել կ հնչիւնը և նրանք կապիտան Կուկին, որն առաջին անգամ գտաւ այդ կղզիները, անուանում էին Տուտ։ Կան ազգեր վերջապէս, որոնք և մինչև այսօր ունեն ընդամենը եօթն բաղաձայն հնչիւններ. հետևաբար մի նոր բաղաձայն հնչիւն արտասանելու համար պիտի յայտնի ույժ, ջանք գործ դնեն իրանց լեզուի որոշ մկանունքների վրայ։ Մտաւոր ստոր զարգացման վրայ կանգնած ազգերի համար, — ասում է Մաքս Միւլլերը, — բաւական է և ամենաանկատարեալ այբբենարանը. ճոխ այբբենարանի կարիք զգացվում է մարդկանց աւելի բարձր զարգացմամբ։ Երբ մի որևէ նոր հասկացողութիւն պահանջում է նոր հնչման արտասանութիւն, մարդկանց ձայնակերտող օրգանները ստիպուած են լինում հնարել և նորանոր հնչիւններ, այսինքն նրանց ձայնական՝ խօսելու ապարատի զանազան մասերը սկսում են զբաղուել նորանոր ֆիզիկական վարժողութիւններով, որոնք միմիայն ժամանակների ընթացքում և արտադրում-ստեղծում են որոշ տիպական հնչիւններ։

Այդպիսով, նախկին մարդը «խօսում էր» ամենահասարակ հնչիւններով՝ նախ ձայնաւոր և ապա բաղաձայն, և այդ բացագանչութիւնների միջոցով նա թարգմանում էր իր մտքերը, իր զգացմունքները։

Մի բան խորին ուշադրութեան արժանի է, որ մեր ուղեղի մէջ ստացուած տպաւորութիւնները գտնվում են օրգանական յարակցութեան մէջ՝ մի կողմից մեզ շրջապատող արտաքին երևոյթների կամ առարկաների առանձնայատկութիւններից, միւս կողմից մեր զգայարանքների, ներվային կենտրոնների զարգացման, կատարելագործման աստիճանից։ Եթէ մի քանի մարդիկ, դիցուք հոգևոր և մտաւոր միատեսակ զարգացմամբ, ականջ դնեն թատրոնի մէջ միևնոյն օթեակից այս կամ այն ներկայացմանը կամ կօնցերտին, նրանց ստացած տպաւորութիւնները չեն կարող միատեսակ լինել, եթէ ենթա-

դրենք, որ միատեսակ չեն նրանց աչքերի կամ լսելիքների զգայութիւնները. Նուրբ լսելիք և սուր աչքեր ունեցողը կունենար ուրիշ, աւելի կատարեալ տպաւորութիւն, քան միւսները։ Եթէ աւելացնենք, որ այդ մարդիկ տարբերվում են իրարից և իրանց հոգևոր օրգանիզացիայով, այն ժամանակ հասկանալի կը լինի, որ միևնոյն երևոյթը, առարկան, որը մեզ շրջապատում է, պիտի արտադրի զանազան, իրարից տարբեր տպաւորութիւններ՝ իրարից զանազանուող մարդկանց վրայ։ Այս է պատճառը, որ մարդիկ, ծնուելով աշխարհագրական զանազան վայրերում, պիտի ստանային, նոյն իսկ միատեսակ երևոյթներից և առարկաներից, զանազանակերպ տպաւորութիւններ և, հետևաբար, միևնոյն երևոյթները և առարկաները ստիպուած պիտի լինէին արտայայտել զանազանակերպ բացագանչութիւններով, զանազան անուններով։

Այս թէօրիական դրութիւնը ամենաէական դրութիւններից մէկն է համեմատական փիլոլոգիայի համար։

Վերլուծելով զանազան ազգերի բառերը՝ համեմատական լեզուաբանութիւնը, գտնելով այդ ազգերի բառերի հիմերում (արմատներում) միանմանութիւն, եզրափակում է, որ այդ ազգերը և՛ շատ նման էին իրար հնումն, միացեղակից և ապրում էին միևնոյն աշխարհագրական վայրերում։ Այդ հետազոտութիւնները հասցրել են փիլոլոգիային այն եզրակացութեանը, որ աշխարհիս վրայ ապրող մարդկանց կարելի է բաժանել որոշ-որոշ խմբերի—հնդկաեւրոպական, սեմական, ալտայ-ուրալական և այլն—որոնցից իւրաքանչիւր խումբը ունեցել է հետևաբար իր որոշ՝ առանձին աշխարհագրական ծննդավայրը։ Մեզ, հայերիս, Թուակցում են հնդկաեւրոպական ազգերին, որոնց պատկանում են յոյները, լատինացիք, սլաւեանները, լիտվացիք և այլն, և մեր ընդհանուր հայրենիքը համարում են այդ վերոյիշեալ ազգերի հետ միասին Հիմալայ սարի ստորոտները, Միջին-Ասիայի մէջ...*)։

*)Պիտի ասել, որ բոլոր փիլոլոգները համաձայն չեն այդ տեսակ բաժանման հետ. այսպէս՝ օրինակ՝ Փրիդրիխ Միւլլերը մարդկութիւնը բաժանում է 12 խմբի և վերջին խումբը անուանում է միջերկրական, ուր մտնում են բասկերը, կովկասեան ցեղերը, սեմ-քամականները և հնդկաեւրոպացիք։ Շտէյնտալը (հոգեբանական բաժանում) ընդունում է երկու խումբ, զանազան ճիւղաւորութիւններով։ Շլէյխերը—3, Բօպպը—նոյնպէս՝ բայց տարբեր խմբակցութեամբ, Պոտտը—4, Շլեգելը—2՝ արդէն ուրիշ սխեմայով, և այլն։ Աւելացնենք, որ անտրոպոլոգիան այդ միևնոյն մարդկութիւնը, իր ունեցած տեղեկութիւնների համեմատ, բաժանում է ուրիշ կերպ, լեզուագիտութիւնից տարբեր ճիւղերի։

Ընդունելով զանազան ազգերի միացեղակցութիւնը, փիլօլօգները ապա աշխատում են բացատրել, թէ ինչու այդ նախկին միևնոյն լեզուն ստացաւ զանազան ձևեր այդ բարեկամ ազգերի համար, թէ ինչու, օրինակ, հայր-ը դարձաւ լատինացոց լեզւում pater, ֆրանսիացոց՝ père; ինչու չորս-ը դարձաւ լատինացիների լեզւում quatuor, ֆրանսիական quatre, յունական՝ tettares, անգլիական լեզւում՝ four, և այլն։ Այդ երևոյթի բացատրութիւնը յենվում է «Գրիմմի օրէնքի» վրայ, որը նոյնպէս համեմատական լեզուագիտութեան էական դրութիւններից մէկն է. եթէ յայտնի ազգակից ժողովուրդների լեզուները— օրինակ՝ սանսկրիտ, յունաց, լատինացոց, կելտերի, սլաւեանների, հոնների (готскій), վերին գերմանական, աւելացնենք, և հայոց—ունեն բառերի մէջ միևնոյն արմատները, այդ ժամանակ այն դէպքերում, երբ այս-ինչ ազգի, օրինակ՝ հայոց, լեզուի մէջ կանգնած է այս-ինչ տառը, օրինակ մեր մէջ հ, գ և այլն, միւս «բարեկամ» ազգերի լեզւում նա անպատճառ փոխվում է միմիայն որոշ հնչման, օր. լատինական p-ի, v-ի և այլն։

Որ հնչիւնները մարդկանց բերանում անդադար փոփոխվում են, դա ակներև է։ Համեմատեցէք թէկուզ մեր տեղական բարբառները մաքուր գրական լեզուի հետ. ղարաբաղցիների քինաս ըմ, քինըլական ըմ ք հնչիւնը գրական գ հնչիւնն է։ Իսկ թէ ինչ պատճառների զօրութեամբ են փոփոխվում հնչիւնները մարդկանց բերանում, դա բացատրվում է այսպէս. երբ մարդիկ ապրում էին մի որոշ տեղ, օրինակ՝ Հիմալայ սարի ստորոտներում, նրանք խօսում էին մի կերպ. բայց երբ նրանցից մի խումբ մեր Հայկ նահապետի խմբապետութեամբ չուեց և եկաւ Վանի ծովի շրջակայքը, ուր աշխարհագրական, կլիմայական և այլն և այլն պայմանները տարբերվում էին Հիմալայի միևնոյն պայմաններից, մարդիկ անզգալաբար սկսեցին փոփոխել և իրանց լեզուի հնչիւնները, որովհետև նրանց օրգանիզմը սկսեց նոր փոփոխութիւններ կրել նոր երկրի մէջ։

«Ես կարծում եմ,—ասում է Մաքս Միւլլերը,—որ հնչիւնների փոփոխման օրէնքը բացառապէս հիմնուած է ֆիզիօլօգիական պատճառների վրայ և չէ ենթադրում ուրիշ որևէ բացատրութիւն»։ Նա իր միտքը պարզում է այսպէս. վերցնենք օրինակ տ հնչիւնը։ Նրան արտասանելու համար մենք պիտի բարձրացնենք մեր լեզուն և որոշ ուժգնութեամբ խփենք մեր բերանի յայտնի մասերին. իսկ երբ մարդիկ փոխում են իրանց ապրելու նախկին պայմանները (տեղափոխւում ենք նրանց դիցուք ցուրտ կլիմայից տաք կլիմայ կամ ընդհակառակը), նրանց

լեզուն այլ ևս անկարողանում է նոյն եռանդով շփուել բերանի որոշ մասերին, և լեզուն բնականաբար աղճատվում է։ «Եթէ Գալլիսի գաւառացին սկսեց ասել père, փոխանակ pater-ի, դա բացառապէս նրա համար,—ասում է Մաքս Միւլլերը,—որ նա նոր երկրում ձանձրանում էր բարձրացնել լեզուն և հրել իր ատամներին»։

Վերագրելով հնչիւնների աղճատման պատճառները մարդկանց մկանունքների թմրութեանը կամ ծուլութեանը (мышечной вялости или лѣни), Մաքս Միւլլերը տրամադիր չէ սակայն այդ աղճատման պատճառները որոնել և՛ նրանց սաստկութեան կամ ուժգնութեան մէջ։ «Եթէ լատինացոց pater խօսքը հոնցեղերը փոխեցին fadar-ի,—ասում է նա,—այդ ժամանակ մկանունքների սաստկութեամբ մենք այլ ևս անկարող ենք բացատրել այդ երևոյթը և պիտի որոնենք ուրիշ բացատրութիւն»։

Բայց սա՛ ի միջի այլոց. հետաքրքրական է, որ ֆիլոլոգները նայում են լեզուի վրայ ոչ իբրև մի ի վերուստ շնորհքի վրայ, այլ մի այնպիսի երևոյթի վրայ, որը թոյլատրում է ֆիզիոլոգիական պատճառաբանութիւն, որը առաջադիմում, կատարելագործվում է մարդկանց ֆիզիոլոգիական զարգացման և կատարելագործութեան հետ միասին։ Անհասկանալի է միայն մի քիչ լեզուաբանների կտրական եզրափակութիւնը։ Եթէ արմատների միանմանութիւնը զանազան լեզուներում մատնանիշ է լինում այդ ազգերի բարեկամութեան և միաերկրացիութեան վրայ հին օրերում, ապա պիտի ազգակից և միաերկրացի համարել և այն բոլոր կենդանիներն ու բոյսերը, որոնց մենք միանման ենք գտնում երկրագնդի զանազան վայրերում, բաժանուած ամենամեծ տարածութիւններով (Եւրոպայում, Ամերիկայում, Աւստրալիայում)։

Հարկաւոր եմ համարում աւելացնել, որ բուսաբանութեան թէօրիայի մէջ այդ միտքը լոկ ճշմարտութիւն չէ. բայց անցնենք մեր ընդհատուած պատմութեանը։

* * *

Թէ որքան տգէտ էր նախկին մարդը, որքան աղքատ, անկատար էին նրա մտքերը, դա, թէև խոտորնակի կերպով, կարելի է եզրափակել՝ դիմելով ներկայ վայրենի ցեղերին, որոնք, այնու ամենայնիւ, ունեն դարձեալ իրենց հոգևոր անցեալը։ Նախկին մարդը,—ասում է Ֆրիդրիխ Միւլլերը,—աւելի ստոր էր կանգնած մտաւորապէս, քան ներկայ աւստրալիացիները,

հօտենտօտները, բուշմանցիները, պապուացիները, քան ներկայ բոլոր վայրենի, անզարգացած ցեղերը... Իսկ և այժմս կան ազգեր, որոնք 4-ից աւել համարել չգիտեն. և, երբ նրանց երեխաների թիւը 4-ից անցնում է, նրանք այն հարցին, թէ քանի երեխաներ ունեն, պատասխանում են՝ շատ։ «Եւ այդ հանգամանքը բացատրվում է մտքի թմրութեամբ»։ «Կան բարբառներ,—ասում է Մաքս Միւլլերը,—որոնք և մինչև այսօր չեն կարողանում զանազանել իրարից այնպիսի գոյները, ինչպէս կապոյտը, սևը կամ մուգ-կանաչը, ինչպէս բաց-դեղինը կամ սպիտակը, ինչպէս դարչնենին կամ կարմիրը»։ Չինացոց լեզւում,—ասում է նա մի ուրիշ տեղ,—ly բառը նշանակում է, և՛ մեր օրերում, և՛ հերկելը, և՛ գութանը, և, եզը, այսինքն այն բոլորը, ինչի միջոցով նրանք հերկում են գետինը։ To խօսքը նշանակում է և՛ մեծանալ, և՛ մեծ, և՛ մեծութիւն։ Հասկանալ արդեօք այդ բառը իբրև գոյական, բայ կամ ածական, դա կախուած է նրանից, թէ որտեղ է գործադրուած բառը։ Պոլինեզիական լեզուներում գրեթէ իւրաքանչիւր բառ կարող է գործադրուել և՛ իբրև գոյական, և՛ իբրև ածական՝ առանց բառի որևէ փոփոխութեան։ Նոյնը և եգիպտական լեզւում։ Գուարայ ասուած ազգի լեզուի մէջ կայ միայն մի բառ՝ արտայայտելու համար այնպիսի տարբեր հասկացողութիւններ, ինչպէս՝ սէր, մտերմութիւն, շնորհակալութիւն, բարեկամութիւն, յարգանք և այլն. այդ բոլոր հասկացողութիւնների համար գործադրվում է ahola բառը։ Նոյնը և ուրիշ ազգերի մօտ։ Այն հասկացողութիւնները, որոնք մեզ համար իրարից տարբերվում են, նախկին մարդու համար խառնվում էին միասին. և դա այն պատճառով, որ նախկին մարդը չէր կարողանում ջոկել իրարից առարկաները կամ երեւոյթները, որոնք ունէին մի կամ մի քանի ընդհանուր կողմեր կամ գծեր։ Նոյն իսկ մեր օրերում կարելի է գտնել այդպիսի բառերի հետքեր և բարձր կանգնած ազգերի մէջ։ Կար ֆազիս լեզուների զարգացման պատմութեան մէջ, երբ դեռ ևս չէր ընդունվում տարբերութիւնը խօսքի այնպիսի էական մասերի մէջ, ինչպէս են բայը և բայանունը։

Գտնուելով զարգացման ամենաստոր աստիճանի վրայ՝ նախկին մարդը չէր կարողանում ընդգրկել առարկաները նրանց բոլոր գծերի և յատկութիւնների մէջ, այլ բաւականանում էր նրանց միայն մի գծով կամ յատկութեամբ, որն աւելի էր ազդում նրա վրայ, ըստ որում դժուար է ասել, որ այդ գիծը լինէր ամենաէական առարկայի մէջ։ «Արիական ազգերը,—ասում է Մաքս Միւլլեր,—ձիուն անուանում էին àsva (as արմատից, որ

նշանակում է սրընթաց)․ իսկ գերմանացիները ցորենի հասկին ասում էին wheat, որ կը նշանակէ սպիտակ, երևի նրա համար՝ որ հասկի հատիկը սպիտակ էր։ Այն ինչ՝ ոչ սրընթացութիւնը և ոչ էլ սպիտակութիւնը գլխաւոր յատկանիշները չեն կարող համարուել ոչ ձիու, ոչ էլ ցորենի հասկի համար»։

Հետաքրքրական է ի միջի այլոց տեսնել, թէ ինչ միջոցներով էր օգտվում նախկին մարդը անուանակոչելու համար այս կամ այն առարկան։ Զարգացման մտաւոր որոշ աստիճանի վրայ, — ասում է Մաքս Միւլլեր,—բաւական էր ձիու պէս խրխնջալ՝ անուանելու համար այդ կենդանուն։ Կայ մի ցեղ, կակաղու ասուած,—շարունակում է նա,—որի մասին պատմում են, թէ երբ նրանցից մէկը տեսնում է աքաղաղին կամ հաւին, սկսում է իսկոյն նրանց պէս կրկչալ, կամենալով դրանով երևի իմաց տալ, որ նա տեսնում է այդ թռչնին։ Չինացոց լեզւում,—ասում է պրոֆ. Հերցլը,—և մինչև այսօր miao կը նշանակէ կատու. hu՝ վագր։

Քաղում եմ մի քանի կտորներ այդ Հերցլից։ Ai,—ասում է նա,—բացագանչութիւն է վախի, երկիւղի. և մենք՝ ռուս-բնագանցիներս՝ ունենք ай, айка բառերը, որ կը նշանակէ՝ վախկոտ։ Եապօնացիների լեզւում aite կը նշանակէ՝ թշնամի, չարակամ։ Ah արտայայտում է երկիւղ, հառաչք ցաւից. և հայոց մէջ կայ բառս՝ ախ, որ կը նշանակէ ցաւ, հիւանդութիւն, իսկ ահ,—աւելացնենք մենք,—երկիւղ։ Va, ve, vi, vu, vai բացագանչութիւններն արտայայտում են երկիւղ, ցաւ, դժբախտութիւն. և նրանցից առաջացել են այս-ինչ բառերը այս-ինչ ազգերի մէջ (մենք այդ բաց թողնենք). հայոց մէջ կայ վախ, որ նշանակում է испугъ. Ճիշտ այդպէս են առաջացել շատ լեզուներում և շատ թռչունների անունները։ Ագռաւին, որի կոկորդի մէջ լսվում է կա-կա-կա, բօշաները անուանում են kakarabi, պարսիկները keregheh, և այլն։ Կկուին, որի ձայնի բնաւորիչ մասնիկներն են կու կամ կուկու, լատինացիք ասում են cuculus, Ֆրանսիացիները՝ coucou. Գորտերին՝ հօլլանդացիք kikker, վրացիները՝ bagagi; сверчокъ-ին հայերը՝ dsghrid (ծղրրիտ), թուրքերը՝ dzirdzer. Հողմը, որի շշնչման մէջ լսում ենք fu, pu, ho ձայները, հայերը ասում են phukh (այստեղից է և փուքս գործիքը), քիւրդերը՝ pif. Շնչին (ho) հայերը ասում են՝ հոգի։

Պրոֆեսորի օրինակների վրայ կարելի է աւելացնել անագին թուով հայկական բառեր, մանաւանդ գաւառական, որոնք անկասկած ծնունդ են առել ձայների ընդօրինակման հիման

վրայ։ Ճվճվալ, բզզալ, տզզալ, մրմռալ, շվշվացնել, ծվծվացնել, փսփսալ, փրփռան, շըշռան և այլն, և այլն բառերից զատ գրականութեան մէջ մենք ունենք այսպիսի բառեր՝ փրփուր, բու, բոմբիւն, պչպչալ, պղպջակ, ճղել, ճիճի, ճիւաղ, կրկչալ, կղկղել, կրճեցնել, հով, հուր, շաչիւն, շշուկ, շըշիւն, ճիչ, վիհ, վիշտ, փնչել, խոխոջիւն, կարկաչել, տրտունջ, ծեփել, ծծել և այլն և այլն, որոնք բոլորը անտարակոյս ծնունդ են առել «արուեստականօրէն», ձայների որսողութեան հողի վրայ։

Պարզելով նախկին մարդու մտաւոր և հոգեկան կերպարանքը և այն հիմնական միջոցները, որոնցով նա օգտվում էր արտայայտելու իր մտքերը և զգացմունքները, անցնենք այժմ նրան, թէ ի՛նչպէս կամ ի՛նչ կերպ նա, նախկին մարդը, անցաւ կամաց-կամաց իր ներկայ բարդ լեզուին՝ ներկայ բազմավանկ բառերին։ Ծանօթանալով ապա այն պերտուրբացիաների հետ, որ կրեց մարդկութեան լեզուն իր զարգացման ճանապարհին, մենք, թւում է, բաւական կը մօտենանք հասկանալու համար՝ թէ բառերի ճակատագիրը և թէ մարդկանց լեզուի զարգացման պատմութիւնը։

Հոգեբանութեան մէջ կայ մի տերմին՝ пերցեպցիա անունով և նշանակում է այն սկզբնական տպաւորութիւնը կամ պատկերը, որը մարդս ստանում է առաջին անգամ՝ շփուելով այս կամ այն առարկայի կամ երևոյթի հետ։ Այդ սկզբնական պատկերի ազդեցութեան տակ մարդս տուեց առարկաներին, շատ անգամ նրանց մի գծի յատկութեան համեմատ, մի անուն, որը, ի՛նչպէս տեսանք, կազմուած էր մի որևէ ձայնակցական բացագանչութիւնից. օ, ա, ահ, հու և այլն։ Հոգեբանութեան մէջ կայ և մի ուրիշ տերմին՝ апперцепция. դա նոյնպէս մտաւոր պատկեր է, որը դուրս է մղվում մեր երևակայութեան, այսպէս ասած, ֆօնի վրայ, բայց միմիայն առարկաների կամ երևոյթների երկրորդական դիտողութիւններից յետոյ։ Ապերցէպցիան նրանով է զանազանվում պերցէպցիայից, որ նրա ժամանակ մեր ուղեղի մէջ ստացուած պատկերը աւելի լի՛, կատարեալ է, քան պերցէպցիայի ժամանակ։ Կոպիտ կերպով արտայայտուելով, պերցէպիայի ժամանակ մեր ուղեղի մէջ տպաւորվում է առարկայի абрисъ, ապերցէպցիայի՝ пատկերը։

Ինչպէս որ,—բացատրում է մեզ Մաքս Միւլլէրը,—պերցէպցիայի ժամանակ մարդս տուեց առարկային այս-ինչ անունը յաճախ նրա մի որոշ գծի յատկութեան համեմատ, այնպէս էլ ապերցէպցիայի ժամանակ նա՝ մարդս՝ լրացրեց և այդ

անունը՝ առարկայի երկրորդական գծի համեմատ։ Լեզուների զարգացման այդ դրությունը, որքան կարելի է հասկանալ լեզուաբաններին, բառերի արմատների ստեղծման դարաշրջանն էր։

Մորֆոլոգիական կողմից՝ բառերի արմատները մի առանձին զանազանություն չեն ներկայացնում այն բացագանչական ձայնարկություններից, որոնցով երկար դարերի ընթացքում «խօսում էր» մարդկությունը։ Նրանք, ինչպէս ցոյց է տալիս լեզուների անալիզը, դարձեալ բաղկացած են մի կամ մի քանի ձայների կոմպլէկսից՝ գումարից։ Եւ այդ ժամանակ մարդիկ խառնում էին միանման գոյները, միանման բոյսերը, կենդանիները. և այդ ժամանակ նա միևնոյն մասնիկով անուանում էր ամենատարբեր հասկացողություններ, որոնց մէջ նա գտնում էր մի կամ մի քանի համանման գծեր կամ կողմեր։

Ինչ և լինի, բառերի արմատները ունեն ահագին, հիմական նշանակություն լեզուաբանների համար, և նրանք, կարծէք թէ, աշխատում են այդ շրջանը բոլորովին դուրս դնել լեզուների զարգացման պատմութեան մէջ։ «Լեզուների արմատները,—ասում է մեզ յայտնի Մաքս Միւլլէրը—այն ձայնական տիպերը, սպեցիֆիական կենտրոններն են, առանց որոնց՝ լեզուագիտությունը (наука о языкѣ) անկարող է գոյություն ունենալ, առանց որոնց՝ լեզուագիտությունը անմտություն է»։

Այսպէս թէ այնպէս՝ մարդկությունը երկար, շատ երկար դարերի ընթացքում խօսում էր միավանկական լեզուով. դա այն րոպէն էր, երբ նա սկսել էր թոթովել, ինչպէս թոթովում են մեր երկամեայ մանուկները, ուժգնանալով թէկուզ հատ ու կտոր մասնիկներով յայտնել իրանց ոչ-խոլամանկ մտքերը։

Կեանքի փորձը, դիտողությունները, աջողությունները, դժբախտությունները, հարստացնելով տեղեկությունների պաշարը, սակայն անդադար առաջ էին մղում մարդկութեան միտքը։ Մառայլ մառախուղի, թանձր մշուշի միջից օրէ-ցօր պարզվում, ակնյայտ էին դառնում առարկաները, երևոյթները. Այնտեղ, ուր առաջ նշմարվում էր մի կոլոր բիծ միայն, այժմս նկատվում են գծագրություններ, նոր շտրիխներ։ Կարծէք, կոյր կամ կարճատես մարդկութեան միտքը հագնում էր միշտ նոր և նոր ուժեղացնող ակնոցներ։ Առարկաները լուսաւորվում էին, հասկացողությունները մանրամասնվում. մարդկանց մտքերը սկսում էին կրթուել՝ նրբանալ։

Առաջ, իր միավանկական լեզուի ժամանակ, նախկին մարդը միևնոյն, դիցուք, ly մասնիկով (կամ բառով՝ անուանեցէք,

ինչպէս կուզէք) արտայայտում էր և՛ հերկելու, և՛ գութանի, և՛ եզան անունները, ta մասնիկով՝ և՛ մեծի, և՛ մեծութեան, և՛ մեծանալու հասկացողութիւնները. իսկ այժմս, իր մտքերի զարգացած դրութեամբ, նա այլ ևս անկարող է բաւականանալ այդպիսի ընդհանուր, հաւաքական մասնիկներով։ Նա այժմ գիտէ, որ գութանը և եզը թէև ճշմարիտ է, շատ անգամ գործադրվում են միևնոյն աշխատանքի ժամանակ, բայց նրանք տարբեր հասկացողութիւններ են. գութանը պիտի շարժել, իսկ եզը—շարժվում է ինքնիրան։

Մարդկանց ճոխացած, ուժգնացած մտքերի ճնշողութեան տակ, որոնք կարիք էին զգում արտաքին արտայայտութեան մէջ, սկսուեց արմատների աճումը, բառերի մօրֆօլօգիական զարգացումը։

Դա մի վերին աստիճանի հետաքրքրական և ուսանելի պրօցեսս է, որի հայեցողութեանը մենք և մտադիր ենք դիմել։

* * *

Լեզուագիտութիւնը՝ ուրիշ, հին, անցեալով, զբաղուող գիտութիւնների շարքում ունի մեծ առաւելութիւններ և յարմարութիւններ իր դրութիւնները պատճառաբանելու ժամանակ. Ընդունելով, որ նախկին մարդու լեզուն իր զարգացման մէջ հպատակ էր միևնոյն օրէնքներին, ինչ որ ներկայ վայրենի ցեղերի լեզուն, լեզուագիտութիւնը, բացի պատմական հետազօտութիւններից, հնարաւորութիւն ունի ստուգել իր եզրափակութիւնները ներկայ վայրենի ցեղերի ուսումնասիրութեան վրայ և այնտեղ, որտեղ իսկական ֆակտերը բացակայում են, լրացնել անալօգիայով, զուգահեռական համեմատութիւններով։ Իսկ այդպիսի հարկաւոր կենդանի օրինակների պակասութիւն չկայ մեր օրերում։

Թողնելով մի կողմ մի շարք այնպիսի վայրենի ցեղեր, որոնք ցրուած են Ամերիկայում, Աւստրալիայում, Ովկէանոսի կղզիներում, թողնելով մի կողմ նոյն իսկ վայրենի պապուասներին, հօտենտօտներին, բուշմէնցիներին, ֆիլօլօգները, մեզ զբաղեցնող խնդրի վերաբերմամբ, թէ ինչպէս լեզուները սկսեցին բարդուել, կարող են բաւականանալ՝ դիմելով աննամացիներին, բիրմանցիներին, սիամցիներին, այսինքն ամբողջ Հընդկա-Չինաստանին և Չինաստանին՝ նրանց հարևան երկիրներով, որտեղ մարդկանց լեզուները գտնվում են դեռ ևս իրանց արմատական, միավանկական զարգացման բարձրութեան վրայ։

«Չինացիների լեզուն,—ասում է Մաքս Միւլլէրը,—ներկա-

յացնում է մարդկութեան հասակի այն դրութեան լուսանկարը, երբ նա, այսինքն մարդկութիւնը, դեռ ևս նոր էր սկսել չորեքթաթ տալ, դեռ նոր էր սկսել փորձել իր ույժերը, առաջ ընթանալու համար»։ «Նրանց լեզուի բոլոր բառերը միավանկական են, և միևնոյն բառը, առանց որևէ փոփոխութեան, կարող է գործադրուել և իբրև գոյական, և իբրև ածական, բայ, մակբայ, մասնիկ։ Օրինակ ta բառը, նայած թէ նա որտեղ է դըրուած նախադասութեան մէջ, կարող է նշանակել և մեծ, և մեծանալ, և մեծութիւն, և խիստ, և շատ»։

Ահա թէ ինչ են պատմում չինացի գրամատիկոսները։ Մենք ունենք,—ասում են նրանք,—երկու տեսակի բառեր՝ լիքը և փուչ։ Երբ,—ասում են նրանք,—այս կամ այն բառը գործադրուած է նախադասութեան մէջ իբրև բայ կամ իբրև անուն, մենք նրան անուանում ենք լիքը, կատարեալ բառ*), իսկ երբ նա գործադրուած է, իբրև խօսքի միւս մասեր («մասն բանից»), իբրև ածանցող, յարաբերական, լրացուցիչ բառ, այն ժամանակ մենք նրան անուանում ենք դատարկ կամ փուչ բառ, թէև, իսկապէս, ձևի կողմից նրանք իրարից ոչնչով չեն զանազանվում։

Ահա այդ դատարկուած, փուչ բառերն են կատարում այն դերը, որը ստիպում է բառերին (կամ նրանց արմատներին) բարդուել։ Բայց ինչ կերպով։ Նախ պատմենք, թէ ինչպէս են խօսում չինացիները։

Շուի, չինացոց լեզուով, նշանակում է ջուր։ իսկ ֆու՝ մարդ. և երբ չինացիները ուզում են ասել ջրկիր, նրանք դընում են այդ բառերը իրար կողքին և ասում են շուի ֆու, որ բառ-առ-բառ կը նշանակէ ջուր-մարդ։ Շուի կը նշանակէ ջուր, իսկ շեոու՝ ձեռք, հետևաբար ղեկավարին նրանք ասում են շուի-շեոու, որ բառ-առ-բառ կը նշանակէ ձեռք-ջուր։ Շու կը նշանակէ գիրք, իսկ շեոու՝ ձեռք. և չինացիք գրողին անուանում են շու-շեոու, բառացի՝ գիրք-ձեռք։ Շի չինարէն նշանակում է սլաք, գին՝ անել, շինել, գործել. և սլաքագործը անուանվում է շի-գին, բառացի՝ սլաք-գործ։ Եւ այլն, և այլն։

Այդպիսով, երբ չինացիները ուզում են արտայայտել մի շատ թէ քիչ բաղադրեալ գաղափար, նրանք վերցնում են այդ

---

*) Հետաքրքրական է, որ երեխաները սկսելով թոթովել գոյական անունների կամ բայերի մէջ են կենտրոնացնում իրանց ցանկութիւնների էականը։ Տա կամ տա-տա բառով նրանք ճգնում են հասկացնել, որ ուտել կամ հաց են ուզում։

գաղափարը կազմող մի կամ մի քանի էլեմենտների անունները և առանց այլևայլութեան, առանց քերականական որևէ շաղկապի կցում իրար. և բառը կամ բառերը պատրաստ կը լինէին, եթէ այդ կամայական, արհեստական գումարման դէմ չը բողոքէր լեզուական արտասանութեան մուզիկան, ֆօնետիկան։ Բառերի ամեն-մի քմահաճ գումարում չէ կարող արտաբերել լեզուն։ Եւ ահա բառերի գումարման պրօցեսսի հետ միասին սկսվում է և մի ուրիշ հակառակ պրօցես. բառերի որոշ մասերը սկսում են փշրուել, քայքայուել, կրճատուել շատ անգամ այն աստիճանի, որ նախկին բառի ամբողջ մարմնից մնում է միայն մի աննշան բեկոր, մի տառ միայն, որը չորացած, ցամաքած տեսքով մնալով կպած էական բառի բունին՝ ստիպուած է վկայել իր մի ժամանակուայ լիքը, պարարտ գրութեան մասին։ Այդ չորացող, քայքայուող մասերի դերերը կատարում են այն բառերը, որոնց չինացի գրամատիկոսները անուանում են փուչ, դատարկ բառեր (hiu-tse)։

Բառական այդ պրօցեսսը զարմանալի նմանութիւն ունի այն պրօցեսսի հետ, որը բօտանիկայի մէջ յայտնի է կօպուլիացիա անունով։ Ստոր օրգանիզմների մէջ, որոնք սովորաբար բաղկացած են պարզ փամփուշտիկներից (клѣточки) և ապրում են ջրի մէջ, երկուսը, կասէք՝ նախամտածուած դիտաւորութեամբ շարունակելու իրանց ապագան, մօտենում են իրար, կանգնում իրար կողքի և սկսում ուռչել հանդիպակաց մասերով մինչև միմեանց սերտ շփուելը. այդ ժամանակ այդ փամփուշտիկներին բաժանող անջրպետը պատռվում է և մէկի բովանդակութիւնը (արականի) անցնում միւսի,(իգականի), մէջ. այդ րօպէից արական փամփուշտի թաղանթը սկսում է չորանալ բոլորովին աներևութանալու կամ թէ թոյլ հետքեր թողնելու ձգտմամբ։

Լեզուների զարգացման այդ կօպիւլատիվ պրօցեսսի ժամանակ,--ինչպէս բացատրում է Մաքս Միւլլեր,—կարող են տեղի ունենալ զանազան դէպքեր։ «Առհասարակ,—ասում է նա,—նկատելի է երեք դէպք։ Առաջին դէպքում իրար հետ գումարուած, լիքը և փուչ, բառերը պահպանում են իրանց սկզբնական արտաքին ձևերը անփոփոխ. դա կարելի է նկատել չինացոց լեզւում. gin նշանակում է մարդ, tu՝ թիւ, գումար. հետևաբար մարդ բառի յոգնակին արտայայտելու համար չինացիք նշանագրում են gin-tu, բառացի՝ մարդ-թիւ։ Այստեղ,—աւելացնում է հեղինակը,—tu բառը յամենայն դէպս արդէն դատարկուել է, որովհետև կատարում է արդէն լոկ որոշողի դեր gin բառի վերաբերմամբ։ Լեզուների զարգացման այս շրջանը Հումբօլտը

անուանում է մոնոսիլլաբիական, միավանկական։

«Երկրորդ շրջանում բառերին կցուող փուչ մասերը ենթարկվում են ֆոնետիկական քայքայման և նրանց տեղ յայտնվում են այն մասնիկները, որոնց մենք այժմս անուանում ենք սուֆիկս կամ ձևակերպող վերջաւորութիւն։ Բիրմանների լեզւում, որ գտնվում է զարգացման մոնոսիլլաբիական շրջանում, բառերի յոգնակին նշանակվում է to մասնիկով, իսկ նրանց ազգակից ժողովուրդների մօտ՝ ֆինների, մորդվացիների կամ օստեակների լեզւում o չքանում է և մնում է միայն t մասնիկը։ Լեզուների զարգացման այս շրջանը Հումբոլտը անուանում է զանգող, ագլիւտինացիօնական շրջան։

«Եւ, վերջապէս, իր զարգացման երրորդ շրջանում՝ բառերի մէջ քայքայվում են ոչ միայն դատարկ մասերը, այլ և լիքը մասերը։ Դա՝ լեզուների երրորդ, վերջին, ֆլեկսիական շրջանն է»։

Ալգեբրայապէս այդ երեք դէպքերը կարելի է նշանագրել այսպէս։ Առաջինը RR, որոնցից իւրաքանչիւրը մի-մի անկախ մեծութիւն է։ Երկրորդը՝ Rr, կամ rR կամ rRr, որտեղ բառի փուչ մասը՝ քայքայուելով՝ մնացել է կպած նրան՝ ետևից կամ առաջից կամ թէ միաժամանակ և՛ ետևից և՛ առաջից. և, վերջապէս, երրորդ դէպքը՝ pr, rp, rpr, երբ և՛ փուչ, և՛ լիքը բառերը միաժամանակ եղծուելով ու կորցնելով իրանց նախկին առանձին առանձին նշանակութիւնները՝ զանգուել են միասին մեր մտքերի ջերմութեան և ֆոնետիկայի կարգապահութեան ազդեցողութեան տակ մի խառաշփոթ մասսայի մէջ։

Ճիշտ այսպէս, ճիշտ միևնոյնը,—եզրափակում է Մաքս Միւլլեր,—տեղի է ունեցել և բոլոր լեզուների մէջ։ Բոլորը՝ ինչ որ մենք գտնում ենք ներկայ բառերի մէջ կմախքացած, չորացած՝ մի ժամանակ լիքը, կատարեալ էր։ Նա՝ ինչ որ մենք անուանում ենք հոլովների յարաբերական վերջաւորութիւն, երկար ժամանակ տեղական մակբայներ էին. ինչ որ մենք անուանում ենք բայերի էական վերջաւորութիւններ, էական դերանուններ էին, և այլն, և այլն։ Մեր բոլոր սուֆիկսները և աֆիկսները մի ժամանակ առանձին-առանձին, անկախ բայեր, անուններ և ձայնարկութիւններ էին։ Բոլորը՝ ինչ որ ներկայ ժամանակակից լեզւում փչացել է, մեռել է, ձևական է դարձել՝ սկզբում լիքը, կենդանի, առանձին-առանձին նշանակութիւններ ունէին։

* *
*

Թէ որքան խոր և ուժգին կարող են լինել մարդուս վրայ ուրիշների գործած օրինակները, խօսքերը, գործողութիւնները կամ թէ նրա շուրջը կատարուող անցքերի, իրողութիւնների, տեսարանների ազդեցութիւնները, ցոյց են տալիս հետևեալ ֆակտերը։

1772 թուականին մի զինուոր, Պարիզում, յայտնի չէ թէ ինչից դրդուած, գնում է ինվալիդների տան մօտ, ընկնում նրա դարպասի կեռից և խեղդվում։ Շատ ժամանակ չանցած՝ նոյն այդ դարպասի կեռից յօժարակամ կախվում են և խեղդվում ուրիշ 15 մարդիկ։

Մի մելամաղձոտ բնաւորութեամբ անգլիացի լորդ՝ վճռելով վերջ տալ իր կեանքին՝ ընտրում է հետևեալ օրիգինալ միջոցը։ Գնում է Իտալիա, բարձրանում նրա Վեզուվ սարը և այնտեղից նետում իրան հրաբղխի բերանը։ Շատ ժամանակ չանցած՝ նրա օրինակին սկսում են հետևել շատ շատերը նրա հայրենակիցներից։

Պլուտարխը պատմում է, որ ոչ ծնողների արտասուքը, ոչ բարեկամների յորդորները չէին օգնում յետ կանգնեցնելու Միլէտ քաղաքի օրիորդներին ինքնասպանութեան ախտից, մինչև որ չհրամանագրուեց դուրս դնել մերկանդամ՝ այդ ինքնասպանների դիակները հրապարակներում ի ցոյց հասարակութեան։

Հոգեբանները վաղուց է արդէն՝ ինչ խոստովանում են, որ ինքնասպանութիւններն ունեն իրանց վարակիչ ազդեցութիւնները։

Էսկիրօլը, — ասում է այն հեղինակը, որից այս օրինակները մենք քաղում ենք, — դեռ 1838 թուականին գրում էր։ «Մարդկութեան բարեկամները պիտի ճգնեն համոզեցնել խմբագրութիւններին, որ չտպեն մանրամասնութիւններ ինքնասպանութիւնների մասին»։

Մալբրանշը պատմում է, որ մի «պատճառաւոր» կին, ներկայ լինելով մի սպանութեան, որը կայանում էր մարդուս անիւելու մէջ, ցնցուած՝ վերադառնում է տուն և ծնում մի մանուկ, ջարդուած՝ մարմնի այն մասերում, ինչ մասերով անցել էր անիւը մահապարտի դիակով...

Ֆրանսիական մեծ յեղափոխութեան սիմվօլական նշանը՝ Փռիգիական գտակը դրել էին դրոշմուած մի մանուկի կրծքի

*վրայ, որը ծնուել էր այդ փոթորկալից օրերում։ Ֆրանսիական կառավարութիւնը վճռեց մշտական թոշակ նշանակել այդ երեխայի մօրը։*

*Բերուած օրինակները ցոյց են տալիս, որ կայ կապ մարդուս հոգու և նրա աչքերի առաջ կատարուող իրողութիւնների միջև։*

*Յայտնի քարոզիչ Վիլտվիլդը, — պատմում է այն հեղինակը, որից քաղում ենք այս տեղեկութիւնները, — իր քարոզների ժամանակ այնպէս էր արտասանում, որ լացացնում էր իր հազարաւոր, նոյն իսկ տասն-հազարաւոր ունկնդիրներին... Գարրիկը հաւատացնում է, որ այդ Վիլտվիլդը կարող է արտասանել Մե*սօպօտամիա *(Միջագետք) բառը այնպիսի զգացմունքով, որ կարող է ստիպել հեկեկալ լսարանի բոլոր հանդիսականներին։*

*Գերմանացի յայտնի նատուրալիստ Պուշէն, նկատելով որ ձկները շատ անգամ փոխում են իրանց կաշու գոյնը համեմատ հողի գոյնին, մանուկ հասակից կորատելով նրանց աչքերը և դարձեալ ջուրը գցելով, տեսաւ, որ ձկները այլևս հնարաւորութիւն չունեն իրանց կաշու գոյնով նմանուելու հողի գոյնին։*

*Ընթերցողը գիտէ, որ մի շարք այնպիսի պսիխիական երևոյթներ, ինչպիսիք են հիպնոտիզմը, կենդանական մագնետիզմը, մօնօիդէիզմը և այլն, գոյութիւն ունեն և բացատրվում են մարդկանց հոգեկան վերին աստիճանի նուրբ զգայնութեամբ։ Մեծ սխալ կը լինի, — ասում է վերոյիշեալ հեղինակը, — եթէ այդ զգայնութեան՝ նմանուելու, հետևելու դերը չորոշենք այնպիսի պատմական մեծ շարժումների մէջ, ինչպիսիք են՝ մահմեդականութեան աճումը, խաչակիր արշաւանքները և այլն։*

*Լեզուագէտները, որոնց խորհրդածութիւնները և դատավճիռները յենվում են ընդարձակ հետազօտութիւնների և համեմատութիւնների վրայ, ոչինչ չեն ասում, թէ ինչպէս ստեղծուեց այն ընդհանուր լեզուն մարդկանց որոշ խմբերի համար, որոնց մենք ազգութիւններ են անուանում։ Մարդկանց ապրուստի միատեսակ պայմանները, միատեսակ մթնոլորտը նրան պատող երևոյթներով՝ կարող էին ի հարկէ օգնել մի ընդհանուր լեզուի ստեղծման ակտին, բայց այդ երևոյթի կազմակերպման մէջ դուրս գնել* նմանուելու, հետևողութեան, իմիտացիայի *ահռելի ճնշողական ոյժը՝ հազիւ թէ հնարաւոր է։*

*Դիմում են մի օր մարդիկ, — ասում է Բէջհօտ, — անգլիական «*Times*» լրագրի խմբագրին և խնդրում յայտնել, թէ ո՞վ է այն երևելի մարդը, որը միակ իր յօդուածներով լցնում է լրա-*

գրի բոլոր էջերը։ Այդ խնդիրքը առաջ է գալիս այն պատճառով, որ «Times» թէ հարթութեան, թէ գողտրկութեան և թէ կոկութեան կողմից խմբագրվում էր զարմանալի միատեսակ լեզուով։ Խմբագիրը ստիպուած է լինում բացատրել, որ լրագրին մասնակցում են շատ գրողներ և եթէ լեզուի մէջ նկատվում է միատեսակութիւն, դա այն պատճառով, որ թերթին մասնակցող աշխատակիցները իրանց գրութեան ձևերի մէջ ակամայօրէն հետեւում են մի քանի տաղանդաւոր գրողների, որոնք տոկունութեամբ և հաստատակամութեամբ գործադրում են իրանց սիրած, մշակած ձևերը լրագրի մէջ։ Նոյնը կարելի է ասել և շատ լրագիրների և ամսաթերթերի վերաբերմամբ։

Թւում է, թէ հաստատապէս կարելի է պնդել մանաւանդ մեր «զգայուն դարում», որ ոչ մի երևոյթ, լինի նա երկրորդ թէ երրորդ կարգի ուժգնութեան, անկարող է առանց ազդեցութեան մնալ մեզ վրայ, եթէ այդ երևոյթը կատարվում է մեր ներկայութեամբ, մեր աչքերի առաջ և որը, աւելացնենք, մօտ է քիչ մեր «սրտին»։ «Նմանողութիւնը, իմիտացիան, այն երևոյթը, որը ստիպում է մարդկանց նմանուել ուրիշներին,—ասում է Կանդինսկին,—մարդկանց էական յատկանիշներից, նրանց ֆիզիկօ-պսիխիական բնութեան գծերից մէկն է, որը դրուած է նրանց ջղային, ուղեղական սիստեմի մէջ»։

Հոգեբանական այդ զարմանալի գծի շնորհիւ, որի ոյժի տակ, անկասկած, կռուեց և կոփուեց լեզուի միատեսակութիւնը մարդկանց ամբողջ խմբերի համար, որի ոյժի տակ ամրապնդուեցին և հաստատուեցին խօսակցական այն ձևերը, որոնց մենք այժմ քերականական ենք համարում, հոգեբանական այդ գծի շնորհիւ, ասում ենք, պիտի կարծել, ընդհանրացան, ընդհանուր քաղաքացիական իրաւունքներ ստացան մեր լեզուի մէջ և այն բոլոր բառերն ու արտայայտութեան ձևերը, որոնք ծնունդ առան բոլորովին աննօրմալ, արհեստական, շինծու կերպով և որի հայեցողութեանը, լեզուների էութեանը մասին ամփոփ գաղափար կազմելու համար՝ մենք մտադիր ենք դիմել։

* * *

Առաջին անգամ լեզուների մէջ արհեստական հոսանք մտցուեց այն լօգիական մտածողութեան ձևի միջոցով, որին «բառահիւսութեան» թէօրիան անուանում է մետաֆօրա (այլաբանութիւն) և որը, ինչպէս վկայում են ֆիլօլօգները, գոյութիւն ունէր լեզուների մէջ նրանց անդրպատմական օրերից։ Դիմենք Մաքս Միւլլէրին։

Մետաֆորան, որ, պիտի ասել, մարդկանց խօսքի աճման ամենազօրեղ նեցուկն էր և առանց որի դժուար է նոյն իսկ երեւակայել, թէ ինչպէս կարող էր առաջ գնալ, առաջադիմել նախկին արմատական լեզուն, կայանում է նրա մէջ, որ մի առարկայի անունն մենք վերադնում ենք միւսի վրայ, որը նման է առաջինին իր մի կողմով, յատկութեամբ։ Այդպիսով,—շարունակում է Մաքս Միւլլէր,—միևնոյն արմատից, որն սկզբում նշանակում էր, օրինակ, պսպղել, փայլել, ծնունդ առան հին լեզուների մէջ՝ արեգակի, լուսնեակի, աչքերի, ոսկու, արծաթի, խաղերի, ուրախութեան և սիրոյ անունները։ Արմատից, որն սկզբում նշանակում էր ծեծել, խփել, ծնունդ առան կացնի, բռան, կաթուածի, յաղթուելու անունները։ Արմատից, որ նշանակում էր փշրուել, քայքայուել, մետաֆորայի շնորհիւ, ծնունդ առան հիւանդութեան և մահի, երեկոյեան և գիշերուայ, ծերութեան և տարուայ վախճանի անունները։

Բացի նրանից, որ մետաֆորան կարելի է միշտ ծուռ, սխալ գործադրել, որովհետև նա յենվում է սուբեկտիվ տպաւորութեան վրայ. բացի նրանից, որ միևնոյն առարկան կարող է ազդել մարդու վրայ իր զանազան կողմերով և զանազան կերպով, որովհետև արեգակը կարող է և՛ այրել, և՛ տաքութիւն սփռել, և՛ պտղաւորել, և կիզել մարդկանց. ծովը կարող է և՛ պատնէշ հանդիսանալ, և՛ հաղորդակցութեան ճանապարհ լինել,—արհեստական տարր լեզուի մէջ մտցվում էր լոկ այն պատճառով, որ գործադրվում էր առարկաների անուանակոչութեան ժամանակ մետաֆորա, որովհետև բառերը լեզուի մէջ պիտի յայտնուէին իրանք-իրանց, անկախ, բնականաբար, համեմատ առարկաների գործած անմիջական տպաւորութեան։ Այդ մետաֆորաները Միւլլէր անուանում է արմատական։ Բացի նրանցից կային, գործադրվում են և մեր օրերում, և բանաստեղծական մետաֆորաներ, երբ՝ օրինակ՝ թխպերը նմանեցնում են սարերի, կայծակը՝ օձի կամ սլաքի և այլն։

Այն բառերը, որոնց մենք հոմանիշ և բազմանշանակ ենք անուանում, ծնունդ առան լեզուների մէջ մետաֆորաների շնորհիւ։ Մետաֆորան թէև բաւական զարկ տուեց լեզուների զարգացման, բայց միևնոյն ժամանակ և բաւական շեղեց նըրան իր բնական ընթացքից։ Mosquet, որ մի խայտաբղէտ թռչնի անունն էր սկզբում, այժմ նշանակում է որոշ ձևի հրացանի։ Ֆրանսիական faucon (соколъ) բառով այժմ անուանվում են փոքրիկ թեթև թնդանօթները։ Tepuztli բառը մեքսիկացիների լեզւում առաջ նշանակում էր կացին, յետոյ պղինձ կամ բրօնզ,

իսկ այժմս՝ երկաթ։ Յունաց լեզւում chalko's բառն առաջ նշանակում էր պղինձ, իսկ այժմ՝ ընդհանրապէս մետաղ։ Minister—փոքրիկ մարդ—այժմ ստացել է բոլորովին ուրիշ նշանակութիւն։ Schlecht գերմանացիների լեզւում առաջ նշանակում էր վատ, իսկ այժմս՝ լաւ։ Ekelhaft առաջ նշանակում է ընտրող, այժմս՝ զզուելի։ Arkáh բառը,—ասում է հեղինակը,—սանսկրիտ լեզւում մի ժամանակ փոխաբերաբար գործադրվում էր և իբրև արեգակ, և՛ իբրև օրհներգութիւն. երբ անցաւ երկար ժամանակ և մոռացուեց, թէ ինչու արեգակը և երգը անուանում են arkáh, Հնդկաստանի մէջ, ուր ապրում էր այդ սանսկրիտ ազգը, սկսեց տարածուել այն համոզմունքը, որ այդ երգերը բղխած են արեգակից և նրանից են ծնուել։ Հէնց այս ճանապարհով և ծնունդ առաւ մրֆը,—կարծում է հեղինակը,—հին աշխարհների մէջ։

Բացի մետաֆորաներից արհեստական տարր մտցվում էր լեզուների մէջ ֆօնետիկական իդիօսինկրազիայի շնորհիւ։ Հայերը, համեմատաբար ասած, բաւական ընդունակ են իրանց արտասանութեան մէջ յարմարուել ուրիշ ազգերի արտասանութեան ճշտութեանը։ Այդպէս չեն բոլոր ազգերը, որոնք ակամայօրէն աղճատում են լեզուի մէջ մտցուած օտարազգի բառերը։ «Գավայցիներին,—ասում է Մաքս Միւլլեր,—գրեթէ երբէք չէ աջողվում արտասանել ուղիղ կերպով այն բառը, որի մէջ մտնում է երկու բաղաձայն հնչիւն. և նրանք, ուսումնասիրելով անգլիացոց լեզուն, երբէք չեն արտասանի сав, այլ միշտ сава». Շատ օտարոտի է ռուսների համար արտասանել Սաթենիկ, Վարսենիկ, այլ միշտ Сатеника, Варсеника.

Լեզուների մէջ արհեստական հոսանք մտցուեց մանաւանդ բռնազբօսաբար, կամայականօրէն, շնորհիւ շատ անգամ սովորութիւնների։

Պօլինեզիա ազգերի մօտ,—ասում է Մաքս Միւլլեր,—և մինչև այժմս սովորութիւն կայ չգործածել այն բառերը, որոնք իրանց մօտիկ ազգականների կամ իրանց վրայ իշխող իշխանների անուններն են նշանակում։ Բացի դրանից, նրանք ոչ միայն դէն են գցում իրանց բառերից այդ անունները, այլ և փոխարինում են նրանց նոր, շինծու մասնիկներով։ Երբ նրանց վրայ թագաւոր «նստեց» ոմն Տու, պօլինեզիացիք դադարեցին գործածել լեզուի մէջ տու խօսքը, որը նշանակում էր կանգնել, և դուրս նետեցին ֆետու (աստղ) բառից, ու մասնիկը, փոխարինելով նրան «իա»-ով—ֆետիա։ Ի նկատի պիտի ունենալ, որ այդ թագաւորները և ազգականները մի քանի անուններ ունէին,

և ամեն մարդ ունէր իր ազգականները, որոնք միևնոյն ժամանակ մահկանացուներ էին... Խօսակցական այդ ձևերը զարմանալի սրընթացութեամբ տարածվում էին, ընդհանրանում և ստանում կատարեալ քաղաքացիութեան իրաւունք նրանց միւս հարազատ բառերի հետ հաւասար։ Ճիշտ միևնոյնը պիտի ասել և կաֆր ազգերի մասին, որոնք, պօլինեզիացիների հետ միասին, կազմում են մարդկութեան մեծ ճիւղերը։ Կաֆրցի տղամարդը,—ասում է Մաքս Միւլլեր,—իր համար դատապարտելի է համարում գործածել այն բառերը, որոնց մէջ լսվում են իրանց կարապետների, առաջնորդների, պարագլուխների անունները. նոյնը և նրանց կանայք։ Կաֆրցի կանայք չեն գործածի այն բառերը, որտեղ թէկուզ մի ձայն, մի հնչիւն յիշեցնում է իրանց, արական սեռից, բարեկամների անունները*)։

Բայց ազգերի, նախկին ազգերի մէջ կային և ուրիշ սովորութիւններ, որոնք նոյնպէս աղաւաղում էին լեզուների «հարազատութիւնը»։ «Երբ հնդկացիք,—ասում է Բէժը (Bates), —կանայք թէ տղամարդիկ, հաւաքվում են միասին զրուցելու, նրանք, ինչպէս երևում է, մեծ բաւականութիւն են գտնում խօսակցութեան ժամանակ հնարել արտասանութեան նորանոր ձևեր, դարձուածքներ և այդպիսով աղաւաղել բառերը**)։ Հենց դա պիտի լինի պատճառը,—շարունակում է նա,—որ Հարաւային Ամերիկայում մենք գտնում ենք լեզուների ահագին բազմատեսակութիւն»։ «Լեզուն,—համոզուած է Բէժը,—շատ թոյլ կրիտերիում է Բրազիլիայի ցեղերի ընդհանուր ծագումը որոշելու համար, որովհետև միևնոյն գետի շուրջը, մի որևէ 200—300 միլ տարածութեան վրայ, կարելի է գտնել 7 մինչև անգամ 8 այլ և այլ ցեղեր»։

Բացի վերև յիշուած պատճառներից՝ լեզուների վրայ ազդում էին և մի շարք այլ հանգամանքներ՝ ֆիզիքական, պրոֆեսիոնալ, քաղաքական, քաղաքացիական, սօցիօլօգիական և այլն։

---

*) Այդ սովորութիւնների հետքերը, ինչպէս գիտեն ընթերցողները, շարունակում են գոյութիւն ունենալ հայերի մէջ մինչև մեր օրերը։ Մեր մէջ դեռ ևս կատարելապէս դատապարտելի է անուանել իր հօրը, մօրը, մօտիկ ազգականներին (հասակաւորներից) և առհասարակ ծերերին՝ իրանց անուններով։ Գրիգոր-ապէրը, Մանիշակ-բաջին, Բուղդան-դային, Առաքել-ամին, և այլն։ Ղարաբաղում կինը իր մարդու անունը, գոնէ ուրիշների ներկայութեամբ, երբէք չի տայ, այլ միշտ կասի՝ «նա», կամ «մեր հալևորը», «քո հայրը», «քո քեռին», նայած թէ ում հետ է խօսում։

**) Ղարաբաղում գլանով զբաղվում են երիտասարդները. մեր հռչակաւոր «կըզօ-մզօն»։

Ահագին նշանակութիւն ունի,—ասում է Մաքս Միւլլեր,— այն հանգամանքը, թէ ում հետ ենք շփւում մենք ամեն օր մեր տանը, հասարակութեան մէջ, ում հետ ենք խօսում մեր երեխայութեան ժամանակ, ովքեր են մեր հայրերը, մայրերը, դաստիարակիչները, ինչ գործով ենք զբաղուած, ինչ գրքեր ենք ուսումնասիրում, ինչ մասնագիտութիւն ենք ընտրել, ինչ ժողովրդի մէջ ենք ծնուել, կուլտուրական ինչ բարձրութեան վրայ է նա կանգնած։

Պատերազմների շնորհիւ,—ասում է Միւլլեր,--լատինացոց բարբառը խօսակցական լեզու դարձաւ Հարաւային, Միջին և Հիւսիսային Իտալիայի համար։ Յետոյ նա մտաւ Գալլիա, Սպանիա, Գերմանիա, Դակիա (Դանուբի վրայ)։ Ապա նա դարձաւ արդարադատութեան և կառավարչական լեզու Աֆրիկայի և Ասիայի լուսաւորուած երկիրներում, որտեղից քրիստոնէական առաքեալների միջնորդութեամբ ներս մուծուեց երկրագնդի ամենահեռաւոր վայրերը։ Իր յաղթական արշաւանքի ժամանակ նա դուրս վռնտեց բնիկ բարբառները Գալլիայից, Սպանիայից, Պորտուգալիայից, խոր արմատներ գցեց Շվէյցարիայի և Վալախիայի մէջ, սպեցիֆական շերտով պատելով բոլոր այդ ազգերի լեզուները։ Բառերը, որոնցով մի ժամանակ խօսում էին Իտալիայի չօբանները (հովիւ), այժմս լսվում են անգլիական կառավարչական մարդկանց բերանում, ֆրանսիական բանաստեղծների լեզւում, գերմանական փիլիսոփայութեան մէջ. Նրա խուլ արձագանգը զգալի է Վաշինգտոնի սենատում, Կալկաթայի տաճարում, Նոր-Զելանդիայի բնակիչների առանին խօսակցութիւնների մէջ։

Իմանալու համար թէ ինչ շփոթ էր տեղի ունենում լեզուների մէջ՝ մտաբերեցէք մի րոպէ պատմական մի քանի իրողութիւններ։ Մտաբերեցէք Կրեսոսին, Դարեհին, որը իր 36-ամեայ թագաւորութեան ընթացքում տարաւ 19 յաղթանակ և գերեց 9 թագաւորներ։ Մտաբերեցէք Կսէրկսէսին Արտաշէս Ա.?) իր 1,700,000 հրոսակներով, որոնք «խմելով չորացնում էին գետերը», իր 1200 նաւերով՝ որոնցով նա անցաւ Պարսկաստանից Յունաստան։ Մտաբերեցէք Ատտիլայի, Ալարիխի («ձիանց կոխ տուած տեղերը խոտը այլ ևս չէր բուսնում»), Թէմուրլանգի, Չինգիսխանի, Օսմանների մարդկային ջրվէժները, որոնք յորդեցին Ասիայի անապատներից սկսած՝ Կովկասեան և Ուրալի լեռներով մինչև Եւրոպայի խորշերը։ Մտաբերեցէք Աննիբալի շրջանակատարութիւնները նրա 100,000 հրոսակներով Աֆրիկայի, Սպանիայի և Իտալիայի միջով դէպի Կարթագէն։ Մտա-

բերեցէք հռոմայեցոց մարդկային հեղեղները, որոնք անցնում էին Յունաստանի, Փոքր-Ասիայի և Հայաստանի միջով դէպի Գանգէսի ափերը։ Շելգունովի հաշուով՝ Եւրոպայի 30-ամեայ պատերազմի ժամանակ առնուազն 5 միլիօն մարդ թողեց իր երկրաւոր կեանքը, իսկ Նապոլէօն Մեծի օրերում մօտ 8 միլիօն մարդ գնդակահար եղաւ…

Գիտնականները մեզ պատմում են, որ այժմ մաքուր, անարատ ազգեր չկան երկրագնդի վրայ։ Ֆրանսիացիք խառնուրդ են լատինացիների, կելտերի, գերմանացոց։ Գերմանացիները՝ սլավեանների, լիտվացիների, կելտերի։ Ռուսները՝ սլավեանների, լիտվացիների, ֆինների, և այլն։ 20,000 հայեր՝ լուծուելով մի 3—4 միլիօն լեհացիների մէջ՝ գրեթէ ոչ մի հետք չթողեցին։ Ֆրիդրիխ Միւլլերի վկայութեամբ՝ ունգարացիների լեզւում մի երրորդականը սլավօնական բառեր են։ Բանահիւսութեան թէօրիան եթէ այսօր մի որևէ լեզուի մէջ որոշ բառեր և դարձուածքներ անուանում է բարբարոսական, դա անշուշտ միայն այն բառերի և դարձուածքների վերաբերմամբ, որոնք դեռ ևս չեն ջնջուել նրա յիշողութեան մէջ…

Սօցիօլօգիական հէնց մի թեթև հողմ, որն անցնում է ժողովուրդների միջով, առանց հետևանքի չէ մնում նրանց խօսակցական լեզուների վրայ։ «Որքան բարձր, մեծ է կնոջ դերութիւնը հասարակութեան մէջ,—ասում է Մաքս Միւլլեր կարաիբի կանանց առիթով,—այնքան աւելի ուժեղ է նրա ազդեցողութիւնը ընտանիքի, գիւղի և ամբողջ ցեղի լեզուի վրայ»։ «Շատ լեզուներ գրեթէ իրանց ծնունդ առնելու օրից՝ բաժանվում են երկու տարբեր ճիւղերի. մէկը իր վրայ կրում է տղամարդկանց խօսակցութեան կնիքը, միւսը՝ կանանց. մէկի մէջ աւելի աչքի են ընկնում բաղաձայն տառերը, միւսի մէջ՝ աւելի ձայնաւորները. մէկը աւելի է հաստատ պահում քերականական ձևերը, քան միւսը, որը շատ անգամ արհամարհում է բառերի վերջաւորութիւնները կամ թէ փոփոխում նրանց։ Փոփոխութիւնները կայանում են նրա մէջ, որ որոշ հնչումներ բաց են թողնվում և նրանց տեղը դրվում ուրիշները. շատ դէպքերում դէն գցած բառերի տեղ դնում են կամայական մասնիկներ*)։ Կարաիբի կանայք Անտիլեան կղզիներում,—եզրափա-

*) Երբ քաղաքական պատճառները ստիպեցին հայերին փոխել իրանց անուններն և ազգանուններն՝ իրանց վրայ տիրապետող ազգերի անունների և ազգանունների համաձայն։ Եւ այդ փոփոխութիւնների հե-

կում է Միւլլէր,—խօսում են բոլորովին տարբեր լեզուով, քան նրանց տղամարդիկ»։ Խօսելով նոյն ազգերի մասին՝ Միւլլէր աւելացնում է. շատ դէպքերում բառերի նշանակութիւնը կամ ծնունդը անյայտ է, այնպէս որ նրանց կարելի է հնարած համարել*)։

*
* *

Մտաբերելով մի րոպէ այն բոլոր հանգամանքները, պատճառները և պայմանները, որոնց տակ և որոնց մէջ բառերը ստիպուած էին կռուել և կոփուել, ըստ որում մեր յիշած հանգամանքներով հազիւ թէ սպառվում են լեզուների վրայ ազդող այլևայլ ֆակտորները. ի նկատի ունենալով բառերի պատմական ճակատագիրը, մարդկանց շատ անգամ գիտակցական միջամըտութիւնը նրանց ծննդեան և ստեղծման պրօցեսսի մէջ,—թւում է, թէ մենք կարող ենք ամենայն ներողամտութեամբ վերաբերուել հին յունաց սօֆիստ Գերմօգենի հայեացքին, որը նա ամփոփում է իր մի բացագանչութեան մէջ։ «Լեզուն,—ասում է նա,—ոչ այլ ինչ է, եթէ ոչ խօսակցութեան պայմանական ձև. և խնձորը համարձակ կարելի է սկսել անուանել շլոր, իսկ շլորը՝ խնձոր, եթէ մարդկանց ստիպէին այդ անելու»։

Որ լեզուները վաղուց են դուրս եկել իրանց նախկին կրաւորական շրջանից և վաղուց մտել նոր, նախկինից բոլորովին տարբեր, դարաշրջան, որը, թեթև պայմանախօսութեամբ, կարելի է անուանել արհեստական, դա ապացուցանում է մեզ փայլուն կերպով այն ձգտումը, ջանքը մարդկանց մէջ, որի սկզբնական էլեմենտները կորչում են հնութեան մէջ և որի առաջին փորձերը՝ արիւն և մարմին դարձնելու՝ արտայայտուեցին մեզանից մի քանի դար առաջ ապրող մարդկանց օրերով, երբ մի շարք այնպիսի մտածողներ, ինչպիսիք են եպիսկոպոս Վիլկենզը, Don Sinibaldo de Mas-ը, Դեկարտը և Լէյբնիցը, կանգ առան՝ մի այնպիսի ընդհանուր գրութեան ձևեր ստեղծելու վրայ, որի միջոցով կարելի լինէր արտայայտել մարդկանց մտքերը՝ ինչ ազգութեան էլ պատկանէին նը-

---

մերում կարելի է նկատել կամ բառերի միակերպ հնչիւն՝ Մկրտիչ—Никита, Թորոս—Тарасъ, Յարութիւն—Артемій, Կարապետ—Карпъ, կամ բառացի թարգմանութիւն՝ Աստուածատուր—Богданъ, Ալլահվերդի. Զարգեար—Серебрякъ, Իւղոտեան—Масловъ. կամ կամայականութիւն՝ Կարապետ—Герасимъ, Աղաջան—Борисъ, Համբարձում—Амвросій, և այլն։

*) Ինձ պատմեցին, որ սուրճ խօսքը (կօֆէ), բառի բուն մտքով, հնարուած է Վենետիկում։

բանք։ Sinibaldo-ն դեռ 1660 թուականներին այդ դիտաւորութեամբ հնարել էր մօտ 2600 այլ և այլ ֆիգուրաներ, որոնք շարուելով մի քանի զուգահեռական գծերի վրայ՝ հնարաւորութիւն էին տալիս մարդուս արտայայտել իր մտքերը. հնարել էր, մի խօսքով, մի ինչ-որ բան նոտաների պէս։

Որ մի այդ տեսակ արհեստական լեզու ստեղծելու ճգնողութեան մէջ կային առողջ հիմեր, առողջ հատիկներ, այդ բանը ապագայում փառաւոր և շօշափելի կերպով ապացուցեց Շլէյերը իր հանրահռչակ աշխատութեան՝ Volapük-ի մէջ։ Ընթերցողները գիտեն այդ լեզուի մասին։ Այդ իր աշխատութիւնը գլուխ բերելու համար, հեղինակը գործադրեց 20 տարիներ, ուսումնասիրելով 50-ից աւելի լեզուներ։ Այդ նոր լեզուավ, որի մէջ գործադրուած կան և թիւրքերէն բառեր, իսկ որի գլխաւոր հիմը կազմում է անգլիականը, իբրև ամենատարածուածը և ամենահասարակը իր քերականական ձևերի կողմից, այժմս Եւրոպայում և ուրիշ տեղեր հրատարակվում են ամսաթերթեր և լրագիրներ, ուր թարգմանաբար զետեղվում են շատ անգամ և ամենանշանաւոր հեղինակների գրուածքներ (օր. Դիկկենսի)։ Այդ լեզուն զարմանալի կերպով տարածվում է մանաւանդ վերջին տարիները։ 1886 թուականին նա ունէր արդէն 100,000-ից աւելի հետևողներ Եւրոպայի զանազան երկիրներում, գլխաւորապէս Գերմանիայում, Հօլլանդիայում, Շվէյցարիայում։

Ի՛նչ ապագայ է սպասում այդ հնարված լեզուին, թողնենք մնայ։ Ես նպատակ չունեմ նմանապէս պնդել, որ մեր ներկայ բոլոր քաղաքակիրթ ազգերի լեզուները, միմեանցից օգտուելով և միմեանց վրայ ազդելով, պիտի ձգտեն բնականաբար ժամանակի ընթացքում հասնելու անպատճառ մի ընդհանուր վերջական լեզուի. ներկայ յօդուածի մէջ ես մտադիր էի պարզ և ակնյայտնի դարձնել միայն մի միտք—որը չը գիտեմ ինչ չափով աջողուեց—որ զարգացած, քաղաքակիրթ ազգերի մէջ լեզուները վաղուց են անցել իրանց նախկին «բնական», «օրգանական», կամ աւելի ճիշտ՝ կրաւորական շրջանը և վաղուց մտել բոլորովին նոր, նշանաւոր աստիճանի, արհեստական շրջան, որտեղ նրանց ուղղութիւն է տալիս ոչ թէ նրանց «հանճարը», «ոգին», այլ մեզ շրջապատող մթնոլորտը իր բազմատեսակ բովանդակութեամբ և այդ բովանդակութեան մէջ ինքը՝ մարդը՝ իր կամքով։

Թերթելով Պետերբուրգի Հասարակաց Գրադարանում մի շարք լեզուագէտների՝ Ֆրիդրիխ Միւլլերի, Մաքս Միւլլերի, Շրադերի, Բէկկերի, Ռենանի և ուրիշների գրուածքները, որոնց

ես գտայ «Филологическія Записки» հանդէսի 1860—1887 թ. տետրերում, ես ուրախութեամբ կանգ առայ Մաքս Միւլլէրի ուսումնասիրութեան վրայ, իբրև մի լեզուագէտի, որն աշխատում էր, իբրև իսկական գիտութեան ջատագով, նոյն այդ գիտութեան լոյսը, հոգին ներշնչել այն էմպիրիկական առարկայի մէջ, որն անուանվում է լեզուագիտութիւն։

Թոյլ տուէք, ապա ուրեմն, ամփոփել մեր մտքերը այդ արհեստական լեզուի մարմնանալու հնարաւորութեան վերաբերմամբ դոյն այդ Մաքս Միւլլէրի խօսքերով, որոնց հոգեբանական հիմքերը գեղեցիկ ակնարկներ են ներկայ լեզուների էութեան և բնաւորութեան տեսակէտից։ Ուշադրութիւն դարձնենք, որ այս խօսքերն, այսպէս թէ այնպէս, ասում է դարձեալ լեզուագէտը, որի կողմից, ինչպէս յայտնի է, ամենայն մի խօսք, ամենայն մի բառ, գրութեան աննշան ձև, թէկուզ յ տառը մեր վրայ բառի մէջ, պահպանվում և պաշտպանվում է մի օտարոտի տենդային հոգատարութեամբ…

«Ծիծաղել արհեստական լեզուի իդէայի վրայ,—ասում է նա,—դա իր տեսակի մի մօդա է մեր օրերում. բայց եթէ խընդիրը իսկապէս այդ աստիճան անհեթեթ լինէր, չեմ կարծում, որ այնպիսի գիտնականը, ինչպէս Լէյբնիցն էր, այնպիսի ջերմ, սրտագին միջամտութիւն ընդունէր նրա վճռմանը մէջ, որի դժուարութիւնը ինքը՝ Լէյբնիցն էլ չէր ուրանում»։ «Եւ ես,—շարունակում է նա,—բնաւ չեմ ուզում հերքել մի այդպիսի արհեստական լեզուի ստեղծման հնարաւորութիւնը այն օրից յետոյ, երբ մարդիկ սովորեցին խօսել եւ դատել»*)։

Թւում է, թէ ընթերցողի համար վերին աստիճանի թափանցիկ են այն հոգեբանական մօտիվները, որոնց՝ թէև գուցէ պարզ չէր զգում ինքը հեղինակը, բայց որոնց ազդեցութեան տակ նա վճռում է գալ այդպիսի կտրական եզրակացութեան։

ԱՌԱՔԵԼ ՂՈՒԼԵԱՆՑ

---

*) «Наука о языкѣ».

# ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ

I. **Ռուսահայ կեանքի ցուրչը**.—*Կաթողիկոսական հարցը.—Հաւանական ընտրելիները.—Վարդապետական, քահանայական և աշխարհական ընտրելիների հարցը.—Հայ եկեղեցու և նրա պետի նշանակութիւնն ու կարևորութիւնը ժողովրդական մասսայի և ինտելիգենցիայի համար.—Մի շարք չարիքներ.—Յօբելեանների շրջանը.—Ուսուցիչներ Ասիլեանի, Ջոհրաբեանի, Կովկասի Հայոց Բարեգ. Ընկերութեան, վիպագիր Շիրվանզադէի, հրապարակախօս Մկրտիչ Փորթուգալեանի յօբելեանները.—Լուրջ և անաչառ կրիտիկայի բացակայութիւնը։*

II. **Թիւրքահայ կեանքի ցուրչը**.—*Ազգային տուրք վճարելու և չվճարելու խնդիրը.—Օսմանեան կառավարութեան նոր պահանջները և ոտնձգութիւնները.—Քրիստոնեայ ազգերի համերաշխ գործակցութիւնը.—Եգիպտոսի Հայոց Բարեգործական Ընդհանուր Միութիւնը։*

III. **Ամերիկահայ կեանքի ցուրչը**.—*Նոր առաջնորդի ընտրութիւնը և սահմանադիր-ռամկավար կուսակցութեան ուժեղացումը։*

## ՌՈՒՍԱՀԱՅ ԿԵԱՆՔ

### I

*Կաթողիկոսական հարցը շարունակում է մնալ օրուայ գլխաւոր հարցը, սակայն թէ մամուլը, որ մի շարք յօդուածներ ու ուսումնասիրութիւններ է նուիրում այդ հարցին, և թէ հասարակական կարծիքը դեռ չեն կարողանում վերջնականապէս կանգ առնել մի որևէ կանդիդատի վրայ։ Մամուլը, գլխաւորապէս «Մշակը», զբաղվում է աւելի սկզբունքային, տեսական հարցերով, այն է՝ կարո՞ղ է կաթողիկոսական ընտրելի համարուել աշխարհականը, քահանան, վարդապետը թէ՞ ոչ։ Եւ «Մշակը» մի շարք յօդուածների հիման վրայ, որոնց մէջ ուշադրութեան արժանի են Յ. Մեղաւորեանի և Մեսրոպ ա. ք. Մելեանի յօդուածները, տրամադրում է ընդունելու իբրև մի պատմական փաստ, որ հայոց եկեղեցու կանոններով և աւանդական սկզբունքներով ոչ միայն վարդապետը, այլ և քահանան և աշխարհականը հաւասարապէս ընտրելի են եպիսկոպոսի հետ միասին կաթողիկոսական աթոռի համար։ «Սուրհանդակ» և*

«Հովիտ» թերթերը, ընդհակառակը, անընդունելի են գտնում այդ թէզիսը և պնդում են, որ ընտրելի կարող է լինել միայն եպիսկոպոսը։ «Հօրիզօնը» առ այժմ լռութիւն է պահում ոչ միայն այդպիսի հարցերի, այլ և առհասարակ քիչ է խօսում կաթողիկոսական հարցի և ընտրելիների մասին և նոյն իսկ աշխատում է չքմեղ ձևանալ և ցոյց տալ, թէ ինքը, որպէս «դեմօկրատիական» օրգան, շատ քիչ է զբաղվում կաթողիկոսական հարցով, մի բան, որ մեղանչում է սատիկ անկեղծութեան և ճշմարտութեան դէմ, քանի որ հայ հասարակութեանը քաջ յայտնի է, թէ «հօրիզօնականները» առհասարակ եկեղեցական ընտրութիւնների ժամանակ ամենից շատ գլուխ կոտրողն են լինում ամէն տեղ։

Եւ սակայն, չնայելով որ Սինօդն արդէն ուղարկել է բոլոր թեմերին իր ընտրողական հրովարտակները, ն անակելով կաթողիկոսական ընտրութիւնը 1911 թ. դեկտ. 11-ին (Նրա միջնորդութիւնը՝ կատարել ընտրութիւնը սեպտեմբերին՝ չը յարգուեց Փոխարքայի կողմից), չնայելով որ նոյն իսկ Թիֆլիսի թեմում եկեղեցական ծխական պատուիրակների ընտրութիւնը նշանակուած է մայիսի 8-ին (մեզ մնում է անհասկանալի, թէ ինչու Թիֆլիսի թեմի ժամանակաւոր կառավարիչ Եփրեմ եպիսկոպոսը այդքան շտապել է), այնու ամենայնիւ դեռ ոչ մի խմբակցութեան, ոչ մի կուսակցութեան և լրագրի կողմից չէ յայտարարվում վերջնական կանդիդատի անունը։

Նոյնը կատարում են և Թիւրքահայերը։ Թիւրքիայում ևս մինչև այսօր ոչ ոք չէ յայտնում, թէ ով է արժանաւորագոյն անձը կաթողիկոսական գահի համար։

Եւ այս հասկանալի է։ Մեր ներկայ եկեղեցական դասի մէջ, թէ՛ ի Ռուսաստան և թէ՛ ի Թիւրքիա, չկայ մի կենտրօնական դէմք, մի այնպիսի մեծ հեղինակութիւն, որ կարողանար իր վրայ բևեռել ամբողջ հայութեան համակրութիւնը և յարգանքը։ Ըստ իրանց մտաւոր, բարոյական և հոգևոր յատկութիւնների, ըստ իրանց անցեալ գործունէութեան՝ վարչական, գրական և եկեղեցական՝ հայ եկեղեցականութեան մէջ ներկայումս երկու խոշոր ներկայացուցիչներ և դէմքեր կան—Օրմանեան և Դուրեան արքեպիսկոպոսները։ Մնացեալները, որոնց անունները տրվում են, այն է՝ Սուքիաս, Սուրէնեան արքեպիսկոպոսները, Կարապետ, Բաբկէն և Մեսրոպ եպիսկոպոսները, թէև օժտուած որոշ յատկութիւններով և արժանաւորութիւններով, թէև ունեն որոշ պլիւսներ, բայց և ունեն որոշ մինիւսներ, անյարմարութիւններ և թերութիւններ, հետևաբար հրա-

պարակի վրայ մնում են երկու դէմքեր՝ Օրմանեան և Դուրեան—ներկայացուցիչներ երկու ուղղութեան, հոսանքի։ Եւ ահա այդ հանգամանքն է պատճառ, որ հայ ինտելիգենցիայի և մամուլի մի մասին—որոնց արտայայտիչ է հանդիսանում «Մշակը»—դրդել է հրապարակ հանելու մի հարց, որ թէև նոր չէ, քանիցս արծարծուել է և մնացել է միշտ թէօրիայի մէջ, բայց կարող է իրագործուել և գործնականութեան մէջ, այն է՝ կաթողիկոսական ընտրելիներ որոնել նաև վարդապետական, քահանայական և աշխարհական դասերի մէջ։ Այդ դասերի մէջ գուցէ հնարաւոր լինի գտնել այնպիսի անձնաւորութիւններ, որոնք ընդունակ և ձեռնհաս լինեն հայոց կաթողիկոսական գահը իր բարձրութեան վրայ պահելու։ Ռուսահայ վարդապետական դասի մէջ առ այժմ իբրև ընտրելի առաջարկվում է Բագրատ վարդապետ Վարդազարեանցը։

Սակայն որովհետև վերջին առաջարկը դարձեալ կարող է մնալ թէօրիայի սահմաններում, թէև եղած ուսումնասիրութիւնները ապացուցին, որ նա ամենևին հակառակ չէ հայոց եկեղեցու օրէնքներին և ոգուն, ուստի շատ հաւանական է, որ ընտրութիւնը կատարուի այս անգամ ևս եպիսկոպոսների շարքից։ Ահա այդ դէպքում իբրև հաւանական կամ ընտրուելու շանս ունեցող եպիսկոպոսներ մնում են միայն երեք հոգի, այն է՝ Թիւրքիայում Օրմանեանը և Ռուսաստանում Սուրէնեանն ու Կարապետը, որովհետև Թիւրքիայում՝ Դուրեան արքեպիսկոպոսը, ինչպէս մեզ հաւաստիացնում են, բացարձակապէս հրաժարվում է դնել իր թեկնածութիւնը, իսկ Ռուսաստանում ամենից շատ խօսվում է Սուրէնեան և Կարապետ եպիսկոպոսների մասին։ Հետևաբար մեզ թւում է, որ վերջնական ընտրութեան ժամին երկանուն կանդիդատների ցանկը պէտք է կազմուի այսպէս. 1) կամ Օրմանեան և Սուրէնեան, 2) կամ Սուրէնեան և Կարապետ։ Այն խմբակցութիւններն և հոսանքները, որոնց աշխարհահայեացքին և ուղղութեանը չեն համապատասխանում այդ կանդիդատները, պէտք է ուրեմն կամ մնան ձեռնպահ կամ, իբրև կոմպրոմիս, կանգ առնեն այդ երեքից մէկի վրայ։ Մենք կը յանձնարարէինք այդ խմբակցութիւններին գոնէ աշխատել քառանուն ցանկի մէջ մտցնել մի վարդապետի, օրինակ, Բագրատ վ. Վարդազարեանցի անունը՝ վերջնականապէս նուիրագործելու կամ լուծելու համար մի հարց, որ ոմանց վիճելի է թւում։

II

Հասարակութեան և օտարազգի մամուլի մի մասի մէջ տրտունջներ են լինում և կարծիք արտայայտվում այն մասին, թէ հայ մամուլը շատ է զբաղվում կաթողիկոսական ընտրութեան հարցով և իբր թէ հայ զանգուածը, մասսան ամենևին կարևորութիւն չէ տալիս այդ հարցին։ Այդ տրտունջը՝ անտեղի և կարծիքը՝ սխալ է և արդիւնք անծանօթութեան հայ ժողովրդի պայմանների և դրութեան հետ։

Հայ ժողովրդական մասսան, գիւղացիական մասսան գուցէ չէ հետաքրքրվում այն հարցով, թէ ո՛վ պէտք է լինի կաթողիկոս. բայց կաթողիկոսութիւնն անկասկած նրա համար մեծ նշանակութիւն ունի և եկեղեցու պետին անպայման նա առաջին նշանակութիւն է տալիս։ Ով եղել և ապրել է գիւղացիների մէջ, նրա համար այդ իրողութիւնը անհերքելի է։ Եկեղեցին, հետևաբար և նրա պետը հայ ժողովրդի, հայ գիւղացու համար հոգևոր և բարոյական կեանքի աղբիւր է համարվում։ Եւ քանի որ այդ այդպէս է, քանի որ հայոց ազգային դպրոցները՝ ստորին և միջնակարգ (ծխական և թեմական), վանական—ազգային կալուածները, բազմաթիւ բարեգործական կտակներ նոյնպէս կապուած են եկեղեցու հետ, պարզ է, որ այդ հաստատութեան պետի հարցը նոյնպէս և դեռ երկար ժամանակ կարևոր նշանակութիւն պէտք է ունենայ և հայութեան վիճակով, ապագայով, բախտով հետաքրքրվող հայ ինտելիգենցիայի և հայ մամուլի համար։ Պատմական կեանքը և անհրաժեշտութիւնը 1600 տարիներից ի վեր կապել, զօդել է հայ ժողովրդին եկեղեցու հետ հոգևոր և բարոյական այնպիսի սերտ կապերով, որ բոլոր ջանքերը, ուղղուած ումեիցէ կողմից՝ փշրել-խորտակելու այդ կապերը, ապարդիւն ջանքեր կը մնան։ Վերջապէս, չպէտք է մոռանալ և մի այլ կարևոր հանգամանք։ Երկրագնդի զանազան անկիւններում սփռուած հայութեան հատուածների, գաղութների մէջ ազգային կապը պահպանուել և պահպանվում է մինչև այսօր ոչ միայն ուրիշ ֆակտորների—լեզու, գրականութիւն, մամուլ—միջոցով, այլ և, գլխաւորապէս, եկեղեցու միջոցով։ Ահա այս ամենը պէտք է թելադրէ հայ գործչին աշխատել ոչ թէ փշրել, խորտակել հայոց եկեղեցին, այլ բարեկարգել այդ հաստատութիւնը և դնել նրան այնպիսի պայմանների մէջ, որ նա կարողանայ կատարել իր միսսիան։ Այդ նկատումով, կաթողիկոսից,

*իբրև այդ ժողովրդական հաստատութեան պետից, շատ բան է կախուած։*

*Այսօր մեր ժողովուրդը սաստիկ տուժում է մի շարք աղաղակող չարիքներից։*

*Չարիք է, որ մենք չունենք օրինաւոր, շիտակ, գործունեայ, ազնիւ, կօրրեկտ Թեմական առաջնորդներ։*

*Չարիք է, որ մեր դպրոցներում արմատացել է կուսակցական նեղ ոգին, որի մի նոր ապացոյցն ևս տեսանք այս օրերս ի դէմս գաւառական այն վարժուհուն, որ 25 երկար և ձիգ տարիներ պաշտօն վարելով արձակվում է իր պաշտօնից այն հիման վրայ, որ չունի ուսուցչական ցէնզ։*

*Չարիք է, որ մեր դպրոցները՝ ծխական թէ թեմական՝ մինչև այսօր չունեն մի անգամ ընդմիշտ հաստատուած և մշակուած ծրագիր, ոչ ևս ներքին կանօնագրութիւն։*

*Չարիք է, որ մինչև այսօր չեն պարզուած, որոշուած հոգաբարձական և ուսուցչական մարմինների փոխադարձ յարաբերութիւնները, իրաւունքները և պարտաւորութիւնները։*

*Չարիք է, որ մեր ահագին և բազմարժէք եկեղեցական, վանքապատկան կալուածները այնպէս յոռի կերպով են կառավարվում, դառնում են մասնաւոր անձանց համար աղբիւր շահագործութեան և հարստութեան, որ վերջ ի վերջոյ ընկնում են սոսկալի պարտքերի տակ և ենթարկվում աճրդով ծախուելու վտանգին, ինչպէս օրինակ՝ Ղարաբաղի թեմի կալուածները, որոնց կառավարիչները, նշանակուած առաջնորդների կամ Սինօդի կողմից, իրանց կառավարութեան ներքոյ գտնուած աւելի քան 60,000 դեսեատին հողերի և կալուածների արդիւնքից չեն վճարել պետական տուրքերը, ամենաշատը տարեկան 1500 ր , և այսօր այդ տուրքերը, ուռճացած՝ տուգանքներով, հասել են 45—50,000 ր. մի ահագին գումարի, որի վճարման համար կալուածները գրաւման ներքոյ են դրուել և կարող են վաճառուել աճրդով։*

*Եւ մի՞թէ չարիք չէ նաև, որ Էջմիածինը, ունենալով ահագին հողեր և բազմաթիւ գիւղեր, չկարողացաւ մինչև այսօր ստեղծել իր համար այնպիսի մի տնտեսութիւն, որ ապահովէր միանգամայն իր նիւթական վիճակը և չստիպէր նրան մուրացկանական ձեռք մեկնել ժողովրդին։*

*Մի՞թէ չարիք չէ, որ Էջմիածինը, ունենալով թանգագին և հազուագիւտ ձեռագիրների ժողովածու, ունենալով ճեմարան, մինչև այսօր չկարողացաւ ունենալ Մխիթարեանների պէս մի միաբանութիւն, մի կաճառ, որպէս զի նրա ուսեալ*

անդամները, մագիստրոս անդամները պարապէին աւելի գրականութեամբ, բանասիրութեամբ, և ոչ ինտրիգներով ու առաջնորդական փափլիկ և եկամուտաւոր աթոռներ գրաւելու տենչով։

Այո, հարկաւոր է մի հեղինակաւոր, կարող ձեռք և գաւազան, որ ուղղութիւն տայ այդ գործերին և արմատախիլ անէ այդ չարիքները։ Սխալ է ասել, թէ անհատը ոչինչ անել չէ կարող, թէ ամբողջ սիստեմը պէտք է փոխել։ Այո, բայց ամբողջ սիստեմը փոխել կարող է մի զօրեղ կամք, մի անկախ, ինքնուրոյն բնաւորութիւն։

## III

Նորից յոբելեանների շրջանումն ենք։ Ներսիսեան դպրոցը շուտով պէտք է տօնէ իր երկու բազմաշխատ ուսուցիչների՝ Ասիլեանի և Զոհրաբեանի ուսուցչական գործունէութեան 25-ամեակը։ Հայ հասարակութիւնը, նոյն իսկ ամբողջ ազգը, կոչվում է տօնելու վիպասան և դրամատուրգ Շիրվանզադէի և հրապարակախօս ու ազգային գործիչ Մ. Փորթուգալեանի յոբելեանները՝ մայիսի սկիզբներին, իսկ այդ ամսի վերջին նշանակուած է Կ. Հ. Բարեգ. Ընկ. 30-ամեայ գոյութեան տօնախմբութիւնը։ Բացի առաջինների (ուսուցիչների) յոբելեանից՝ մնացած յոբելեանները դրուած են ոչ միայն գաղափարական, այլ և դրամական հողի վրայ։ Կարգադրիչ մասնաժողովները, նշանակելով այդ յոբելեանները, նպատակ ունեն հաւաքել և բաւական մեծ գումարներ՝ յոբելեարներին տրուելու համար։ Եթէ յոբելեարներին նիւթապէս ապահովելու խնդիրը գաղափարական տօնախմբութեան հետ կապելը ունի իր յարմարութիւնը, նա ունի և բաւական մեծ անյարմարութիւնը։ Բացատրենք մեր միտքը։ Երբ առաջարկվում է տօնել մի որևէ հաստատութեան,—ներկայ դէպքում Կ. Հ. Բարեգ. Ընկերութեան—գործունէութեան յոբելեանը, այդ պարագայում անհրաժեշտ է հանդիսանում դրամական կողմը, այսինքն ոչ մի անյարմարութիւն չկայ, այլ, ընդհակառակը, պէտք է որ հասարակութիւնը իր համակրութիւնը չարտայայտի միայն պլատոնական, այլ և շօշափելի կերպով և իր դրամական նուէրներով միջոց և հնարաւորութիւն տայ այդ հաստատութեանը՝ շարունակելու իր արդիւնաւէտ գործունէութիւնը։ Բարեգործական Ընկերութիւնը մի հաստատութիւն է, որի արդիւնաւէտ գործունէութիւնը, մանաւանդ նրա գոյութեան առաջին

քսան տարիների ընթացքում, ընդունուած է ընդհանուրից: Բոլորովին այլ բան է, երբ առաջարկվում է տօնել յոբելեանը այս կամ այն գրողի, գործչի, որի գործունէութիւնը ենթակայ է քննադատութեան կամ որի գործունէութեան, տաղանդի, ունեցած ուղղութեան մասին կարծիքները տարբեր են:

Մենք ամենևին դէմ չենք գրողների, հասարակական գործիչների յոբելեանը տօնելուն, ոչ, այլ պահանջում ենք միայն, որ այդ տօնախմբութիւնը դրուի այնպիսի պայմանների մէջ, որոնք հնարաւորութիւն տան անաչառ կրիտիկային որոշելու, թէ այն գրողը, գործիչը, որի յոբելեանը տօնվում է, ինչ տեղ և դիրք պէտք է գրաւէ գրականութեան կամ հասարակական պատմութեան մէջ: Իսկ անաչառ, լուրջ կրիտիկայի թևերը կտրվում են, երբ յոբելեանի հարցը՝ կապելով դրամական հարցի հետ, մի տեսակ ճնշումն է գործ դրվում կրիտիկայի վրայ. «Ի սէր Աստուծոյ. նա նիւթական խիստ անձուկ վիճակի մէջ է. աշխատեցէք գովել, որպէս զի հասարակութիւնը իր օգնութիւնը չը խնայէ»: Եւ այդպիսի սիստեմի արդիւնքը լինում է այն, որ լռում է անաչառ, անկողմնակալ կրիտիկան ու առաջ են գալիս միայն ապօլօգիան և շողոքորթութիւնը:

Այդպիսի պայմանների մէջ կատարուեցին մեր մէջ այն յոբելեանները, որոնք կապուած էին նիւթականի, դրամականի հետ, ինչպէս՝ օրինակ՝ Ղ. Աղայեանի, Լէօի յոբելեանները, որոնց ժամանակ լռեց անաչառ, արդար կրիտիկան, որովհետև քննադատի գլխին շարունակ դամօկլեան սրի պէս կախուած էին այս խօսքերը. «Խեղճը գրիթէ կուրացել է, օրուայ ապրուստի միջոց չունի» (Լէօի վերաբերմամբ): Եւ դրանով հասնում էին ցանկալի նպատակին, թէև յետոյ պարզվում էր, որ «խեղճը» ոչ միայն շատ լաւ տեսողութիւն է ունեցել և ունի ևս, այլ և այն ժամանակ, երբ նա իրան աղքատ-Ղազարոս էր ձևացնում, նա հազարներ ունէր, որ տալիս էր տոկոսներով ուրիշներին...

Նոյն պատմութիւնը այժմ կրկնվում է Շիրվանզադէի վերաբերմամբ: Հրապարակի վրայ դրուած է առաջարկ՝ տօնելու նրա գրական գործունէութեան յոբելեանը: Թւում էր, թէ հէնց այժմ է յարմար և պատշաճ առիթը լուրջ, անաչառ, անկողմնակալ քննադատութեան միջոցով որոշելու, թէ ինչ տեղ է բռնում Շիրվանզադէն հայ գրականութեան մէջ իբրև վիպագիր, գրող, թէ ինչ նոր ուղղութեան, սիմվօլի, սկզբունքի, հայեացքի ներկայացուցիչ է նա: Այդ անհրաժեշտ է նրա համար, որ Շիրվանզադէի՝ իբրև վիպագրի և դրամատուրգի՝ մասին մինչև այսօր չէ եղել մի լուրջ, անաչառ, գիտնական քննադատութիւն.

եղել են կամ նրա արժանիքները գլխովին բացասող, ժխտող, կամ նրան չափազանց և շողոքորթական խոսքերով ներբող կարդացող կարծիքներ։ Վերցնենք Լէօի քննադատութիւնը, որ արտայայտուել է «Ռուսահայոց գրականութիւնը» գրքի մէջ (էջ 141—152 և 284—326), և որից մենք կը տեսնենք, որ, Լէօի կարծիքով, Շիրվանզադէի մի քանի ստեղծագործութիւնները ներկայացնում են ուղղակի հիւանդոտ արտադրութիւն, վիժուածք. Նա համարում է Շիրվանզադէին՝ իբրև գեղարուեստական գրողի՝ սառն և անտարբեր, որ ոգևորութիւն և ջերմութիւն չէ ցոյց տալիս, որ չէ կարողանում մշակել հոգեբանական բարդ երևոյթներ, որի գրուածքները մի խոր հետք չեն թողել մեր գրականութեան մէջ, որ ունենալով մի փոքրիկ տաղանդ՝ չէ կարողանում գեղարուեստական ամբողջացրած, համաչափ, ներդաշնակ երկեր տալ. Նրա նկարագրութիւնները շատ աղքատ են, լեզուն չափազանց թոյլ, ոչ-պատկերաւոր։ Միտք, թռիչք, եռանդ, կրակ, թափ ու կայծ չկան. պ. Շիրվանզադէն կարծես վէպ չէ գրում, այլ պաշտօնական արձանագրութիւններ...։ Իբրև դրամատուրգ, Շիրվանզադէի գեղարուեստը գաղափարազուրկ է, և այլն։

Այս ամենից այն եզրակացութիւնը պէտք է հանել, որ Շիրվանզադէն, Լէօի կարծիքով, ամենաշատը մի միջակ գրող է, շատ հեռու գեղարուեստից...

Ճիշտ է՞ արդեօք այդ կարծիքը թէ՞ նա արդիւնք է կողմնակալ և աչառու վերաբերմունքի, նախանձի և կրքի. այդ կարող է երևան հանել միայն անկողմնակալ, անաչառ, գիտնական կրիտիկան։ Ինքը Լէօն իր նշանաւոր «մեղայականի» մէջ, որ անմահացրեց նրա անունը, խոստովանում է անկողմնակալ կերպով, որ մեղանչել է ճշմարտութեան և վաւերագրերի դէմ. և եթէ Շիրվանզադէն հասկացած լինէր մի քանի տարի առաջ ձեռք մեկնել Լէօին, ընդունել նրան իբրև գրական հակառակորդ և ոչ իբրև «մղդսի», ինչպէս նա (Շիրվանզադէն) անուանել էր Լէօին «Տարազի» մէջ, շատ հաւանական է, որ Լէօն այդ կարծիքը չարտայայտէր նրա մասին։ Յամենայն դէպս, մենք տեսնում ենք, որ Լէօի քննադատութիւնը ոչ մի արժէք չունի ներկայումս թէ pro և թէ contre Շիրվանզադէի։

Նոյնպէս ոչ մի արժէք չեն կարող ունենալ այն կարծիքները, որ ոմն Ս. Համալեան և ուսուցիչ Հ. Յովհաննիսեան արտայայտեցին նորերս Շիրվանզադէի մասին, անուանելով նրան հանճարաւոր ներկայացուցիչ ոչ միայն հայ, այլ և եւրոպական գրականութեան։ Այդպիսի շողոքորթ և իրականութեան անհա-

մապատասխան ներբողները միայն ծիծաղ կարող են յարուցանել։

Եւ ահա երբ ներկայանում է առիթ՝ լուրջ, անաչառ կրիտիկայի համար՝ ցոյց տալ Շիրվանզադէի իսկական արժանիքը և տեղը, մուրճի նման հարուածում են քննադատին, ներշնչելով. «Ի սէր Աստուծու, խեղճը նիւթական կարիքի մէջ է. կամ լաւ գրեցէք, կամ ոչինչ»։

Եւ, անշուշտ, լուրջ, անաչառ կրիտիկան ստիպուած է լռել։

## IV

Նոյնը կարելի է ասել և Մկրտիչ Փորթուգալեանի յոբելեանի մասին։

Մկրտիչ Փորթուգալեանը մի հնաւուրց և պատկառելի ազգային-յեղափոխական գործիչ է, որ երկար և ձիգ տարիներ գործել է Թիւրքիայի հայ ժողովրդի վերածնութեան գործի համար և ենթարկուել է հալածանքի, աքսորի համիդեան բռնապետութեան օրերում։ Իր գործունէութեամբ, ուղղութեամբ, հայեացքով, նա հակառակ է եղել «Դաշնակցութիւն» կոչուած հայ յեղ. կազմակերպութեան, համարելով նրա գործելակերպը կործանարար հայ ժողովրդի համար, և կազմել է ուրոյն «արմէնական» կուսակցութիւն՝ իր «Արմենիա» թերթի անունով։ Դաշնակցութիւնն ևս շարունակ հալածել է նրան և նրա կողմնակիցներին։ Սակայն մի երկու տարի առաջ յանկարծ Մ. Փորթուգալեանը փոխեց իր ֆրօնտը և, ձուլուելով Դաշնակցութեան մէջ, սկսեց փչել նրա փողը։ Այդ զարմանալի էվօլիւցիայի, կերպարանափոխութեան պատճառները դեռ անյայտ են մնում, բայց, անկասկած, այդ կերպարանափոխութիւնը մեծ հարուած հասցրեց Մ. Փորթուգալեանի ժողովրդականութեանը և համբաւին։ Եւ ահա այդտեղ դարձեալ լուրջ և անաչառ կրիտիկային էր վիրապահուած՝ քննել, լուսաբանել այդ կերպարանափոխութեան պատճառները, վեր հանել Փորթուգալեանի անցեալ գործունէութեան ամբողջ արժանիքը, տալ նրա գնահատութիւնը ըստ արժանոյն։ Բայց դարձեալ քննադատի առաջ ծառանում է նոյն հարցը՝ «կամ լաւ, կամ ոչինչ»։

Ցամենայն դէպս, Մ. Փորթուգալեանի անցեալ գործունէութիւնը, «արմէնական» շրջանի գործունէութիւնը, արժանի է յարգանքի և գնահատութեան։

---

## ԹՈՒՐՔԱՀԱՅ ԿԵԱՆՔ

### I

Այն համաձայնութիւնից յետոյ, որ կայացաւ ազգային երեսփոխ. ժողովի երկու ընդդիմադիր հատուածների միջև, որի հետևանքով պատրիարքական տեղապահ ընտրուեց Վահրամ արքեպիսկոպոս Մանկունին և պատրիարքի ընտրութիւնը յետաձգուեց ապրիլին կամ մայիսին, մի տեսակ զինադադար կամ խաղաղութիւն է հաստատուել այն երկու կուսակցութիւնների միջև, որոնք դրութեան տէրն են հանդիսանում։ Բայց այդ զինադադարը, անշուշտ, երկար չի տևի։ Թէ Կ. Պօլսում և թէ գաւառներում վերսկսուել են ազգային ժողովների և զանազան մարմինների երեսփոխանների ընտրութիւնները (Կ. Պօլսում ազգային երեսփոխանական ժողովի անդամների $^{1}/_{5}$ մասը վիճակով դուրս եկած լինելով՝ պէտք է նրանց տեղ նորերը ընտրուեն)։ Եւ ահա այդ ընտրութիւնների ժամանակ մի նոր փաստ եկաւ ապացուցանելու, թէ «ազատական» անունով իրան յորջորջող կուսակցութիւնը որքան անկեղծ էր, երբ առաջարկում էր, որ ազգային սահմանադրութեան պահանջը՝ վիճակով երեսփոխանների $^{1}/_{5}$ մասի դուրս գնալու վերաբերմամբ՝ ճշտութեամբ և ամենայն խստութեամբ գործադրուի։ Նոյն ազգային սահմանադրութիւնը պահանջում է, որ ընտրելու և ընտրուելու իրաւունք ունենայ այն ազգայինը, որ տարեկան 75 ղրուշ ազգային տուրք է վճարում։ Եւ ահա, հիմնուելով սահմանադրութեան այդ պահանջի վրայ, կենտրոնական վարչութիւնը կարգադրեց, որ 75 ղրուշի տուրքը չվճարողները իրաւունք չունենան մասնակցել ընտրութիւններին։ Այդ կարգադրութիւնը առաջ բերեց «լալ և կրճտել ատամանց» դաշնակցականների մէջ։ Եւ նրանք սկսեցին բողոքել, թէ դրանով մեծ հարուած է հասցվում ընտրութիւնների դեմօկրատիականութեան, թէ տուրքի պահանջը ապօրէն է և այլն և այլն։ Այդ վայնասունը բարձրացուեց այն պատճառով, որ շատ դաշնակցականներ--որոնք, ի դէպ է ասել, սիրում են միայն առնել և ոչ տալ—իրանց կեանքում վճարած չլինելով ազգային որևէ տուրք՝ զրկվում են հնարաւորութիւնից ընտրելու և ընտրուելու։ Երբ դաշնակցականներին ձեռնտու է, նրանք յենվում են օրէնքի բառացի և ճշգրիտ գործադրութեան վրայ, երբ անձեռնտու է, նրանք ունեն պատրաստի ֆրազներ. «օրէնքը հնա-

ցած է, օրէնքի ոգին պէտք է ըմբռնել և ոչ տառը»։ Ազգային վարչութիւնը կամ խառն ժողովը, կամենալով վերջ տալ կեղծ-ազատականների պատրուակներին, մտել է կոմպրոմիսի մէջ, որոշելով որ 75 ղրուշի փոխարէն պահանջուի 25 ղրուշ տուրքի վճարումը, մինչև որ ազգային երեսփ. ժողովը իր վերջնական որոշումը տայ։

Սակայն, ինչպէս ցոյց է տալիս գործերի ընթացքը, այդ զիջումն ևս ոչ մի օգուտ չէ կարող տալ դաշնակցականներին կամ կեղծ-ազատականներին, և ընտրութիւնները, ըստ ամենայն հաւանականութեան, կը վերջանան յաղթանակով սահմանադիր-ռամկավարականների կամ ազգային-առաջադիմականների համար, որոնց արտայայտիչ հանդիսանում է կենտրոնի խմբակցութիւնը։

Հայ ժողովուրդը Թիւրքիայում սկսել է քիչ-քիչ հասկանալ, թէ ինչ են ներկայացնում իրանցից «ազգային փրկիչները»։ Հիասթափութիւնը նրանց վերաբերմամբ հետզհետէ լայն ծաւալ է ստանում։ Եւ դրա գլխաւոր պատճառներից մինն ևս այն է, որ օսմանեան կառավարութիւնը կամ «ժէօն Թիւրքերի» ռէժիմը այնպիսի տրամադրութիւններ և ձգտումներ է ցոյց տալիս հայերի վերաբերմամբ, որոնք նկատելի չէին նոյն իսկ Աբդիւլ-Համիդի բռնապետական ռէժիմի ժամանակ. և սակայն դաշնակցականները, որոնք շարունակ պարծենում են, թէ կռուել են Աբդիւլ Համիդի այդ ձգտումների դէմ և ազատել հայ ազգը վերահաս վտանգից, այսօր շատ մեծ ներողամտութեամբ և զիջողաբար են վերաբերվում նոր ռէժիմի հակահայկական ձգտումներին։ Այդ հանգամանքը բացել է թիւրքահայ ժողովրդի աչքը, և նա սկսել է ճանաչել, թէ ինչ են ներկայացնում իրանցից ազատականութեան և դեմօկրատիութեան անունով ճառող «ազգային փրկիչները», որոնց համար սեպհական, կուսակցական շահերը հարիւրապատիկ բարձր են ազգային ընդհանուր շահերից։

## II

Թիւրքական նոր սահմանադրական ռէժիմի ոտնձգութիւնները մասնաւորապէս հայերի և ընդհանրապէս Թիւրքիայի քրիստոնեայ ազգութիւնների դէմ արժանի են խորին ուշադրութեան։ Եւ Թիւրքիայի քրիստոնեայ տարրերը—հայ, յոյն, բուլգար և այլն—հասկացել են այդ և ջանքեր են գործ դնում

միահամուռ կերպով դիմադրել այդ ոտնձգութիւններին՝ իրաւական հողի վրայ, համերաշտ գործակցութեամբ։

Օսմանեան կառավարութեան պահանջները այն են, որ հայ, յոյն, բօլղար ազգային վարժարանները ենթարկուեն կառավարութեան ուղղակի կօնտրօլին, որ ամեն մի դպրոց բացուի միայն ժողովրդական լուսաւորութեան մինիստրութեան թոյլտւութեամբ, որ ազգային դպրոցների ծրագիրները ուղարկուեն ի քննութիւն կառավարութեան, որ կառավարութեան կողմից զանազան ազգերի դպրոցներին տրուող կրթական նպաստը յանձնուի ոչ թէ պատրիարքարանին կամ առաջնորդարաններին, այլ ուղղակի դպրոցների ուսուցիչներին, որ ազգային դպրոցների օսմանեան լեզուի ուսուցիչները ուղղակի նշանակուեն կառավարութեան կողմից, տարեկան քննութիւնները նոյնպէս կատարուեն կառավարութեան հսկողութեան ներքոյ, ուսուցիչները լինեն օսմանեան հպատակներ և օտարահպատակներն իրաւունք չունենան պաշտօնավարել, աշակերտները ազատ չհամարուեն զինուորագրութիւնից և այլն, և այլն,—մի խօսքով, օսմանեան կառավարութիւնը ձգտում է ըստ ամենայնի իր հսկողութեանը ենթարկել քրիստոնեայ ազգութիւնների բոլոր դպրոցները։

Բայց դրանից վերջին ժամանակները տեղի ունեցան մի քանի դէպքեր, որ նք պարզ ցոյց են տալիս, թէ «սահմանադրական Թիւրքիան» ոչնչով չէ կամենում տարբերուել աբդուլհամիդեան Թիւրքիայից՝ հայերի վերաբերմամբ։

Ադանայում հայերը ունէին մի եկեղեցի, որ ջարդերի ժամանակ կործանուել էր։ Հայերը նրա տեղ շինում են մի նոր եկեղեցի, սակայն Ադանայի կուսակալ Ջէմալ բէյը, որի գովասանքով «Ազատամարտ» թերթը զարդարում էր իր էջերը, հրամայում է արդէն շինուած նոր եկեղեցին հիմնայատակ քանդել, առարկելով թէ նախկին եկեղեցու տեղը չէ շինուած։ Եւ ոչ պատրիարքական տեղապահի զանգատները, ոչ Կիլիկիայի կաթողիկոսի բողոքները չեն կարողանում «ազատամիտ» կուսակալի այդ բարբարոս արարքը կանգնեցնել։

Մի այլ տեղ՝ Վանում հայ զինուորներին արգելվում է հայերէն գրել նամակները իրանց ընտանիքներին։

Իսկ հողային հարցը, այն է՝ հայերից խլուած հողերը քիւրդերի ձեռքից յետ առնելու և իրանց տէրերին վերադարձնելու հարցը մնում է իր նախկին դրութեան մէջ։

Եւ ահա դաշնակցականները, որոնք իրանց յայտարարում էին միշտ պաշտպան հայ ժողովրդի իրաւունքների, անգիտա-

*նալ են ձևացնում բոլոր այդ ոտնձգութիւնները, որովհետև դաշըն են կապել «Ժէօն Թիւրքերի» հետ։ Եւ այդ ամենը տեսնելով հայ ժողովուրդը շօշափելի կերպով համոզվում է, որ դրանք չեն ազգի փրկիչներ, այլ լոկ իրանց շահը մտածողներ և իրանց որովայնը պարարտացնողներ։*

*Ցանկանք Թիւրքիայի հայ ժողովրդի բարօրութեան համար, որ նա կարողանայ ինքը գլուխ կանգնել իր գործերին, արմատախիլ անէ ազգային անդաստանից ցորենի հասկերը խեղդող որոմները և ույժ տալով կուլտուրական, կրթական հաստատութիւններին՝ կարողանայ ոտքի կանգնել և դիմադրել աջից և ձախից եղած ոտնձգութիւններին։*

## III

*Այդ տեսակէտից վերին աստիճանի մխիթարական է այն երևոյթը, որ Եգիպտոսում 1906 թ. հիմնուած Հայկական Բարեգործ. Ընդհանուր Միութիւնը հետզհետէ բարգաւաճելով լայնաբար տարածում է իր գործունէութիւնը Թիւրքիայի հայաբնակ վայրերի վրայ, հետամուտ լինելով միայն և եթ կուլտուրական, ազգային-բարեգործական նպատակների։ Միութեան վարիչները, գլուխ ունենալով Պօղօս Նուպար փաշային, երեք տարուայ ընթացքում կարողացել են շօշափելի արդիւնք ցոյց տալ։ Միութիւնը առ 1 մայիսի 1910 թ. ունէր 1,001,518 եգիպտական ղրուշ հիմնական դրամագլուխ (100 ղրուշ=մի եգիպտ. ոսկու=9 ր. 72 կ.), իսկ մի տարուայ եկամուտը (1 ապրիլ 1909—1 ապր. 1910 թ.) եղել է 244.848 ղրուշ։ Ուրեմն 3 տարուայ մէջ նա կարողացել է հիմնական դրամագլուխ կազմել մօտ 100,000 րուբլի։ Միութիւնը ճիւղեր է բացել ոչ միայն Թիւրքիայի զանազան կենտրոններում, այլ և Ամերիկայի, Եւրօպայի զանազան երկիրներում և մտադիր է ճիւղեր բանալ նաև Ռուսաստանում և Պարսկաստանում։ Նրա գործունէութեան կամ օգնութիւն հայթայթելու գլխաւոր ասպարէզն եղել է Թիւրքիան (Փոքր-Ասիան և Կիլիկիան), ուր բացել է որբանոցներ, դպրոցներ, օգնութիւն է հասցրել աղէտեալներին և այլն։ Անշուշտ, Միութիւնը շատ մեծ ապագայ ունի, և հայութեան նուիրական պարտքն է նիւթական ու բարոյական աջակցութեամբ օգնել նրան իրագործելու այն վեհը միսսիան, որ Միութիւնը ստանձնել է, այն է՝ նպաստել ասիաբնակ հայ ժողովրդի մտաւոր-բարոյական զարգացմանը, աշխատել բարւոքել նրա նիւթա-*

կան և տնտեսական կացութիւնը և քաջալերել այդ արդիւնքը առաջ բերելու ծառայող որևէ ձեռնարկ կամ հրատարակութիւն։

Մասնաւորապէս Ռուսաստանի հայերի վրայ բարոյական պարտականութիւն կայ խրախուսել այդ ազգային կուլտուրական մեծ հիմնարկութիւնը։

---

## ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ԿԵԱՆՔ

Եգիպտոսից անցնելով Ամերիկային, պէտք է ասենք, որ այդտեղ ևս հայութիւնը փորձեր է անում թօթափել այն ամօթալի լուծը, որ դաշնակցականները ձգտում էին դնել նրա պարանոցին։ Այդտեղ ևս հայութիւնը սթափվում է, և Ադանայի Նախկին առաջնորդ Մուշեղ եպիսկոպոսի ընտրութիւնը ի պաշտօն առաջնորդութեան պարզ ցոյց է տալիս, որ սահմանադիր-ռամկավար կուսակցութիւնը սկսել է նուաճումներ անել և Ամերիկայի հայութեան մէջ։ Մնում է, որ նա աւելի սերտ կապերով զօդուի Թիւրքիայի հայութեան հետ։ Արդէն վերջին պատգամաւորական ժողովը, որ կատարեց առաջնորդի ընտրութիւնը, որոշել է Ամերիկայի թեմը ենթարկել Կ. Պօլսի հայոց պատրիարքարանի իրաւասութեան, ինչպէս առաջ էր, որպէս զի կարողանայ իր ներկայացուցիչն ևս ունենալ Թիւրքիայի հայոց ազգային երեսփոխանական ժողովի մէջ։ Այդ ձգտումը խիստ բնական է, քանի որ Ամերիկայի հայ գաղութները բաղկացած են գրեթէ բացառապէս օսմանեան հպատակներից և եկուոր են Թիւրքական Հայաստանից։

ՇԱՒԱՐՇ

---

# ՌՈՒՍ ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ

---

*«Міръ», գրական, գիտական, հասարակական-քաղաքական ամսագիր. յունուար, № 1, 1911 թ.։*

*Ռուսաստանում քաղաքական րէակցիան ներկայ մոմենտին այնքան է ամրացել և հաստատուել հասարակական կեանքի բոլոր երևոյթների նկատմամբ, որ 1905-ի ազատութիւնների հրովարտակը՝ մնացած տառերի շարքում՝ իրականութեան տեսակէտից իսպառ կորցրել է իր բովանդակութեան համապատասխան նշանակութիւնը։ Հասարակական երևոյթներից խոշորագոյնն է՝ մամուլը, որը պէտք է հնար ունենայ ճշտապէս արտայայտելու իրական կեանքի ելևէջները։ Սակայն այն վերին սանկցիայով, որ տուել է երրորդ Դուման րէակցիայի բոլոր կաշկանդումներին, խօսքի ազատութեան սկզբունքը բաւական սեղմուած է... Գրելու և արտայայտուելու մէջ սակայն օրաթերթերը աւելի կաշկանդուած են, քան միւս պարբերական հրատարակութիւնները։ Իբրև ապացոյց՝* «Современный Міръ» *ամսագիրը։*

«Міръ»*-ը սակայն կանգնած լինելով չափաւոր-պրօգրեսիստ հողի վրայ՝ կողմնակից չէ հասարակական կեանքի այն արմատական բարենորոգումներին, որոնք միայն, գէթ ա՛ռ ժամանակ, կարող կը լինեն ամոքել բնութիւնից առաջացած սօցիալական ցաւերն ու թշուառութիւնները։*

«Міръ»*-ը խոշոր չափով ազդուած է Տօլստոյի քրիստոնէական աշխարհահայեացքով և հաւատացած է, որ անհատի բարոյական կեանքի սեփական ջանքերով կատարելագործուելով՝ սօցիալական չարիքները ըստ ամենայնի կը վերանան։ Այստեղ աննշմարելի է թողնուած այն հանգամանքը, որ ազատ կատարելագործուելու համար ամենից առաջ համապատասխան միջավայր է հարկաւոր. սենեակի հեղձուցիչ մթնոլորտը դուրս կը վտարուի և տեղը կը բռնի օդի թարմ հոսանքը, երբ փակ դռներն ու լուսամուտները ազատ կը բացուեն։ Միջավայրը—*

այն է սեն՚ակը –կը փոխուի, և եթէ ներսը ապականուած օդից հիւանդացողներ կան (այսինքն ապրողներ), կը դարմանուեն բնական ճանապարհով։ Երբ քաղաքական կեանքը բռնութիւններով է ցանցուած, ապա հասարակութիւնը ոչ միայն չէ կարող բարոյական ինքնակատարելութեան մասին մտածել, այլ և խեղդամահ կը լինի ծանր մթնոլորտում...

Այնուամենայնիւ «Міръ»-ը, կանգնած լինելով առաջադիմական ճանապարհի վրայ, որոշ պօստուլատներ առաջադրում է քաղաքական կեանքի անհրաժեշտ բարենորոգումների տեսակէտից։

Մենք կանգ առանք այս ամսագրի քաղաքական դաւանանքի վրայ, կամենալով ամենից առաջ պարզել նրա գոյնը։

«Міръ»-ը, որպէս մի պարբերական հրատարակութիւն, բազմաբովանդակ է. Նրա ներքին արժանիքը այն է, որ նա իր մէջ պարփակում է գիտական գրեթէ բոլոր ճիւղերից որոշ տեղեկութիւններ՝ ըմբռնելի և մատչելի միջին ընթերցողի համար։

Գեղարուեստական ազատ գրուածքների մէջ աչքի է ընկնում փորձուած գրող Ի. Պոտապենկօյի «Въ заносахъ» (Բուքերի մէջ) փոքրիկ հեղինակութիւնը։ Թէպէտ տենդենցիօզ բնաւորութեամբ, բայց գեղեցիկ է գրուած և Ա. Կրեմլէվի «Грузинская греза» (Վրացական ցնորքը) ընդարձակ ոտանաւորը։ Աչքող են նոյնպէս Կ. Բարանցէվիչի և Գուսէվ-Օրէնբուրգսկիյի երկու փոքրիկ պատմուածքները։

Գեղարուեստական, բելլետրիստիկական բաժնից յետոյ գալիս են գիտական որոշ ճիւղերից համառօտ տեղեկութիւնների ընդհանրացումներ։ Պրօֆ. Ն. Ն. Եակօվլէվ զետեղել է մի յօդուած՝ բրածոյ օրգանիզմների մասին եղած գիտութեան պատմութեան գլխաւոր մօմենտների վերաբերութեամբ։ Ապա հետեւում է պրօֆ. Լիվենտալի յօդուածը զինուորական օդագնացութեան մասին, որը պատկերազարդ է։ Յօդուածագիրը երկար կանգ առնելով օդաչուների պատերազմական գործողութիւնների հարցի վրայ և հակադրելով դրանց Կրուպպի գործարանում նորերս ձուլուած հսկայական թնդանօթները՝ յատկապէս օդաչուների ոչնչացման համար, գալիս է այն եզրակացութեան, որ վերջինս ոչ մի հնարաւորութիւն չի ունենայ իր նպատակին հասնելու, քանի որ օդաչուները հնար ունեն անընդհատօրէն լող տալու օդի ընդարձակ տարածութեան մէջ թնդանօթները սակայն շրջապատուած՝ զօրքերով, արտիլէրիայով, կավալէրիայով և մարդկանց այլ ահագին բազմու-

թեամբ՝ անկարող կը լինեն խուսափելու մի րոպէում չորս հարիւր գնդակ շաղ տուող օդաչուներից։ Առաջ կը գայ մի չտեսնուած մասսայական մարդասպանութիւն։ Եթէ մանաւանդ տեխնիկան հասնի այն կատարելութեան, որ մոտօրները չունենան իրանց ներկայ շռինդը, իսկ օդաչուներն էլ ներկուած լինեն երկնագոյն, ապա թշնամու երևալն ու գործողութիւնների անակնկալութիւնն արդէն բաւական պատկերացնում է դրութեան սոսկալիութիւնը։ Զարմանալի չէ սակայն այն հանգամանքը, որ մարդկանց քաղաքակրթութեան հետ աստիճանաբար զարգանում է և միլիտարիզմը. Նա պիտի անընդհատ կատարելագործուի, քանի ներկայ կարգերում՝ կազմակերպուած պետութիւնների մէջ տնտեսական կաստայական շահերը պիտի պաշտպանուեն վայրագ պատերազմների միջոցով։ Հասարակական ներկայ կարգերի յեղաշրջումը արմատական միջոցն է այդ ամենի դէմ...

Վերջապէս յաջորդում են յօդուածներ, նոյնպէս պատկերազարդ, կենդանաբանութեան, բուսաբանութեան, հանքաբանութեան, անտրոպօմետրիայի և իրաւաբանութեան մասին։

Առհասարակ «Міръ»-ը կազմուած է ճոխ և հետաքրքրական բովանդակութեամբ։

***

„Искры Жизни", պատկերազարդ, գրական և գիտական հանրամատչելի ամսագիր. №№ 2 և 3.

Համառուսական վերջին ազատագրական շարժումները կեանքի հրապարակը նետեցին դեմօկրատիական մի շարք սկզբունքներ։ Մամուլի տեսակէտից ձևական նշանակութիւն ունեցաւ հանրամատչելի, էժանագին հրատարակութիւնների անհրաժեշտութիւնը հասարակ մասսայի համար։ Հրապարակ եկան մի շարք էժանագին ամսագրեր, շաբաթաթերթեր և օրաթերթեր։ 1905-ից առաջ անհնարին էր երևակայել, թէ կարող է երբևիցէ գոյութիւն ունենալ մի կոպէկանոց օրաթերթ և կամ տարեկան միմիայն 75 կոպէկանոց ամսագիր, որպիսին է մեր յանձնարարելիք սոյն „Искры Жизни" ամսագիրը։

Սրա բովանդակութիւնը կազմուած է այն բոլոր նիւթերից, որոնք կարող են անհրաժեշտ և հետաքրքրական լինել գլխաւորապէս սեփականազուրկ մասսայի համար։ Այդ տեսակէտից նշանաւոր տեղ պէտք է բռնեն և կարևոր նշանակութիւն ունենան «Բանուորական կեանք», «Ուսումնարան և ընտանիք» և «Կօօպերացիա» բաժինները։

Այդքան մատչելի և էժանագին ամսագրի համարները, ինչպէս ցոյց են տալիս նրա №№ 2-ը և 3-ը, կազմուած են խնամքով ու բովանդակալից, սակայն անշուշտ այն չափով, որ չափով թոյլ են տալիս այդ անելու ներկայ խստագոյն ցենզուրայի կաշկանդիչ պայմանները։ Ամփոփ ու հակիրճ կազմուած յօդուածները ըստ ամենայնի ծանօթացնում են հասարակական որոշ հարցերի հետ և իրազեկ պահում ընթերցողին տեղի ունեցած երևոյթների յաջորդականութեան նկատմամբ։ Ամսագրի № 2-ում շնորհալի կերպով է գրուած «Քաղցածութիւն» էտիւդը՝ բանուորական գործադուլային կեանքից։ Երկարատև քաղցածութիւնը սեփականազուրկ, բազմանդամ ընտանիքի տէր Մաքսիմին այնքան է տանջել ու հիւծել, որ նա մի շարք մտատանջութիւններից յետոյ դնում է իր գրպանը երկաթի մի հաստ կտոր և դուրս գնում փողոց։ Նա անցնում է հարուստ մայրաքաղաքի գեղեցիկ փողոցներով, որտեղ էլեքտրական առատ լոյսը պարզում է մարդու առջև քաղաքի՝ կենտրոնացած հարստութեան ու ճոխութեան մէջ թաղուած կերպարանքը. անցնում է Մաքսիմը տեսնելով այդ ամենը և յիշում իր աղքատ, ողորմելի խրճիթը՝ լցուած իր սովատանջ մանուկներով ու հալ ու մաշ եղած կնոջով։ Անցնում է նա կուշտ ու փարթամ, տաք հագնուած մարդկանց մօտով և զգում է, թէ ինչպէս խոնաւութիւնն ու թացը թափանցում են նրա մարմինը, թէ ինչպէս կսմթող ձիւնը ներս է մտնում նրա ծակ ու մաշ եղած կօշիկներից. զգում է նոյն կերպ, թէ ինչպէս իր ցուրտ ու բանտանման խրճիթում դողդողում ու լալիս են իր թշուառ զաւակները՝ անմխիթար մօր հետ միասին։ Անցնում էր նա այդ ամենի մօտով և վերջապէս կանգ առնում կօնդիտերական մի լուսավառ պատուհանի առջև։ Մեծ և թանգագին էր այդ պատուհանի ապակին, որից ամբողջովին երևում էին ներսի այն բոլոր կարկանդակներն ու գաթաները, թարմ հացերն ու բլիթները, որոնք անողորմ կերպով գրգռում էին քաղցած ու յոգնած Մաքսիմի ախորժակը։ Մաքսիմի ցասումը աւելի ևս սաստկանում է, երբ նա տեսնում է, թէ ինչպէս կուշտ մարդիկ մտնում ու դուրս են գալիս հարուստ պաշարով։ Նա սեղմում է գրպանի երկաթը և մի վայրկեան ինքնամոռացութեան ենթարկուած՝ իր բոլոր ոյժով երկաթը շպրտում ապակու վրայ։ Ապակին փշրվում է. իրարանցում, աղմուկ, և Մաքսիմը ձերբակալվում է...

Բացի վերոյիշեալից և գեղարուեստական բաժիններից, այդ մատչելի ամսագիրը առանձին տեղ է յատկացնում կանանց

շարժմանը և Պետական Դումային։ Ամսագրի № 3-ի մէջ զետեղուած են Լ. Ն Տօլստոյի մի քանի փոքր գրուածքները, նրա համառօտ կենսագրութեան հետ միասին, որտեղ յիշուած է, թէ Տօլստոյի բոլոր գրուածքների թիւը՝ մինչև 1908 թուականը՝ եղել է 250։ Այս համարի «Կօօպերացիայի կեանքից» բաժնում զետեղուած է նշանաւոր սօցիալիստ-ուտօպիստ Ռօբէրտ Օուէնի կենսագրութիւնն (1771 թ.—1858 թ.) ու նրա կատարած դերը բանուորական կօօպերացիաներ հիմնելու գործում։

* * *

«Новая Жизнь», ամսագիր գրականութեան, գիտութեան և հասարակական կեանքի. № 1 (1910 դեկտեմբեր) և № 2 (1911 յունուար).

Ծաւալի մեծութեան և նիւթերի հարստութեան նայելով կարող ենք բացարձակ կերպով նկատել, որ նրա բաժնեգինը—տարեկան 4 ր. 50 կ.—միանգամայն մատչելի է հասարակական լայն խաւերի համար։ Ամսագիրը կուսակցական որոշ իդէօլօգիա չունի, ուստի և նա իրան յայտարարել է անկուսակցական։ Սակայն նրա գոյնը որոշ է և ուղին ընդգծուած. դա՝ ամսագրի օպպօզիցիօն բնոյթն է իր արմատական պահանջներով։ Այստեղ խմբուած են տարբեր բանակների ներկայացուցիչներ, որոնք իրանց քաղաքական դաւանանքով շատ մօտ են իրար։ Բանակները սակայն իրանց այդ ձըգտումների տեսակէտից հակոտնեաներ չեն. դրանք կադետական կենտրոնից դէպի ձախ և աւելի ձախ թեքուող արմատականներ են։ Բելլետրիստիկական բաժնում մասնակցում են՝ Մակսիմ Գորկիյ, Լ. Անդրէեվ, Այզման, Կուպրին, Վերեսաեվ, Զայցէվ, Բլօկ, Բունին, Բալմօնդ, Սկիտալեց, Իւշկէվիչ Ս., Բրիւսօվ և առհասարակ ռուս այն նորագոյն գրողները, որոնք վերջին տարիներս հրապարակ ընկան իրանց՝ հասարակական կեանքը քննադատող ու վերլուծող արտադրութիւններով։ Ամսագրի գիտական, քննադատական և հրապարակախօսական բաժիններում յիշվում են այնպիսի անձանց անուններ, որոնք հանրածանօթ են ռուս գիտական և գրական-հասարակական շրջաններում։ Այստեղ են պրօֆ. Անիչկօվ, Ն. Մօրօզօվ, Ագաֆօնօվ, պրօֆ. Կարէեվ, Կօտլեարեվսկիյ, Զիվէլեգեան, Լունաչարսկիյ, Օվսեանիկօ Կուլիկօվսկիյ, Տուգան-Բարանօվսկիյ, Բերլին, Մ. Էնգելգարդտ և ուրիշները։

Ամսագրի դեկտեմբերի №-ը, որ առաջինն է, կազմուած է ճոխ բովանդակութեամբ։ Առաջին տեղը գրաւել է Արցիբաշէվի

«Палата Неизлѣчимыхъ» պատմուածքը (Անբուժելիների Հիւանդանոցը)։ Խիտ գոյներով է նկարագրուած չորս տարբեր հիւանդների դրութիւնը հիւանդանոցում։ Դրանցից երեքը հասակաւոր են, մէկը՝ երեխայ։ Առաջինները երեքն էլ տարբեր խառնուածքների տէր մարդիկ։ Օպտիմիստ, պեսսիմիստ և անտարբեր։ Առաջինը համբերութեամբ է տանում իր ցաւը և համեմատաբար լաւ է զգում իրան. պեսսիմիստը իր ծայրայեղ յոռետես հայեացքների հետ ունի և անբուժելի ցաւ, որ արագ կերպով քայքայում ու կազմալուծում է նրա արդէն փտող ու պալարուած մարմինը. անտարբերը—երրորդը—զրկուած իր ոտներից, ըստ երևոյթին՝ շնորհիւ պրօգրեսսիվ կաթուածի, յիշելով իր անցեալ գոհունակ կեանքը, այստեղ էլ չէ մոռանում բժշկից պահանջելու որոշ կօմֆօրտ՝ ծաղիկներ, գրքեր, նախաճաշիկ և լողարան։ Բայց լաւատես հիւանդից, միւս երկուսը մեխուած են անկողիններին։ Վանողական է հիւանդների կացութիւնը այդտեղ։ Բոլորն էլ այդ անբուժելի հիւանդանոցում դատապարտուած են մահուան, շնորհիւ՝ անշուշտ՝ նոյն անբուժելի ցաւի, որի անունն է սիֆիլիս։ Հիւանդանոցի այդ սոսկալի բնակիչների սենեակը բերվում է և մի այլ հիւանդ, որը այնքան զզուած է տիրող նողկալի կացութիւնից, որ մերժելով բժշկի օգնութիւնն ու հիւանդանոցի ամեն յարմարութիւն, ամբողջ մի օր և գիշեր անշարժ մնում է նստած և լուսադէմին միայն բարձրանում է տեղից, վերցնում գիշերային փոքրիկ լամպը, թափում իր վրայ նրա միջի նաւթը, բռնկեցնում իր շորերը և դառնալով կենդանի ֆակել՝ ողջ հիւանդանոցը մի սոսկալի իրարանցման մէջ գցում...

Պատմուածքը միանգամայն կիսատ գրուածքի տպաւորութիւն է թողնում։

Նոյն համարում զետեղուած են Ա. Ն. Տոլստոյի՝ «Лихорадка», Գ. Չուլկովի՝ «Домъ на пескѣ» և իրաւաբան Վ. Բէրնշտամի՝ «Записки адвоката» հետաքրքրական հեղինակութիւնները։ Վերջինս իր յիշողութիւնների նիւթը վերցրել է իր քրէական քաղաքական դատերի պաշտպանութեան պրակտիկայից։ Գրուած է սահուն և բովանդակութեամբ հետաքրքրաշարժ։ Ամսագրի հրապարակախօսական մասում աչքի է ընկնում Նեվէդօմսկիի ընդարձակ յօդուածը՝ նուիրուած Լ. Ն. Տոլստոյի յիշատակին։ Շօշափելով մեծ գրողի աշխարհահայեացքի գլխաւոր տարրերը, նա շեշտում է, որ Տոլստոյը հասարակական ներկայ կարգերի անողոք մերկացնողն էր։ Եթէ Եւրոպան խոշոր հետաքրքրութեամբ բևեռեց իր հայեացքը Տոլստոյի վրայ, ապա դա

նրա կողմից ինքնաժխտման մի նշանաւոր փաստ էր. դա Եւրոպայի կողմից՝ յափշտակուած էր իր հակադրութիւնը ներկայացնող տիպով։ «Интересъ Европы къ Толстому—это какое-то влеченіе къ своей противоположности, какое-то самоотрицаніе»,—ասում է Նեվէդօմսկին։ Եթէ Տօլստոյի այդ մերկացումը առաջ է բերել մի այդօրինակ հետաքրքրութիւն տիրապետող դասակարգի կողմից, ապա ուրեմն «պէտք է ընդունել, որ դա բուրժուական ներկայ կուլտուրայի մերձեցող լիկվիդացիայի ամենավառ նշաններից մէկն է»,—ասում է նա։

Ինչո՞վ է մօտ Տօլստոյը աշխատաւոր մասսաներին և դեմօկրատիկ տրամադրուած ինտելիգենցիային. սա կարևոր հարցերից մէկն է։ Այս տարրերի վերաբերմունքը դէպի Տօլստոյը պարզելու համար անշուշտ ամենից առաջ անհրաժեշտ է ելակէտ ունենալ նրա սօցիալական ձգտումների բովանդակութիւնը։ Չպէտք է մոռանալ, որ Տօլստոյը անխնայ կերպով մերկացրեց և իրանց սոսկալի կերպարանքով հրապարակի վրայ դրեց հասարակական այն ինստիտուտները, որոնք ամբողջովին յենվում են բռնութեան ու ստրկութեան պրինցիպների վրայ։ Ժխտումն ներկայ ամբողջ հասարակակարգի—ահա որտեղ է հանճարեղ ծերունու բարձր արժէքը՝ աշխատաւոր մասսաների և սրանց իդէօլօգիան համակրող ինտելիգենցիայի համար...

Նոյն ամսագրի 2-դ համարը ստուար է առաջինին նըման։ Առաջին տեղն է բռնում Բօրիս Զայցեվի «Густя» (անուն է) բնորոշ պատմուածքը ռուսական կեանքից։ Ապա՝ Դ. Այզմանի «Дисциплинарный баталіонъ» գրուածքը, որի բովանդակութիւնը՝ կազմալուծուող մի ընտանիքի պատկերն է ներկայացնում։ Այստեղ շարունակութիւնն է տպվում Գ. Չուլկովի «Домъ на пескѣ» գրուածքի։

Ամսագրի հրապարակախօսական բաժնում Դր. Պօլօնսկին խօսում է Վլ. Կօրօլէնկօյի մասին և նրա վերջին գրուածքներից մէկի՝ «Бытовое явленіе»-ի մասին, ակնարկելով որ Ռուսաստանը չէ կարող մնալ առանց մի այնպիսի հեղինակութեան, որը լինէր նրա խղճի ձայնը համայն մարդկութեան առջև լսելի դարձնող, կատարուող ծանր դէպքերի նկատմամբ անողոք դատավճիռը արձակող։ Առանց Տօլստոյի ապրել չէ կարելի,—ասում է Պօլօնսկին.—Ռուսաստանին մի նոր Տօլստոյ է հարկաւոր... Եւ կարծես նա ուզում է կանգ առնել Կօրօլէնկօյի վրայ, որը թէպէտ վերին աստիճանի շնորհալի, տաղանդաւոր գրող է, իր դաւանանքներով՝ արմատական, սակայն անշուշտ Տօլստոյի տեղը գրաւել նա տակաւին չէ կարող...

Հանճարեղ մարդուն քիչ չնպաստեց նրա երկարակեցութիւնը, որի ընթացքում նա արժանաւորապէս կարողացաւ ջայլել գրաֆ-պարոնից դէպի սեփականազուրկ բատրակը, մերկացնելով ամեն ինչ, խարազանելով ու տապալելով ներկայ բուրժուական հասարակակարգի ամեն մի կուռքը։

Այո, պէտք էր մի մեծ, երկար, ութսունամեայ կեանք, որ՝ հանճարեղութեան հետ կապուած՝ կարելի լինէր բոլոր պաշտըւող սրբապղծուած «արժէքները անարժէքացնել»։ Այժմ պէտք է սպասել, որ մարդկութիւնը իր ապագայ նոր հասարակութեան տենչանքների թափն ու կռիւների պերիպետիաները արտայայտուած ու ամփոփուած կը տեսնի մաքուր իդէալիստ Տոլստոյի արժանաւոր յաջորդ մատերիալիստ-[illegible] հանճարի ձեռքով. .

ՍՈՒՐԽԱԹԵԱՆ

# ԱՐԵՒԵԼԱԳԻՏՈՒԹԻՒՆ, ԿՈՎԿԱՍԱԳԻՏՈՒԹԻՒՆ, ՀԱՅԱԳԻՏՈՒԹԻՒՆ

**Դանիէլ Խվոլսոն**

Արեւելագիտութիւնը այս օրերս շատ զգալի մի կորուստ ունեցաւ։ Խորին ծերութեան, 92 տարեկան հասակում, այս օրերս վախճանուեց հռչակաւոր արեւելագէտ և սեմիտաբան Դանիէլ Ահարոն Խվոլսոնը, ազգով հրէայ և դաւանանքով մովսիսական։

Խվոլսոնը ծնուեց 1819 թուին հրէական մի չքաւոր ընտանիքում և սկզբում ստացաւ կրօնական սկզբնական ուսում Խեդերում և Էշիբօտում, ուր և ուսումնասիրեց Ս. Գիրքը, Թալմուտը և վերջին գրքի միջնադարեան մեկնիչների գրուածքները։

Չբաւականանալով դրանով, նա յետագայում առանց կողմնակի օգնութեան սովորեց ռուսերէն, գերմաներէն և ֆրանսերէն, իսկ ապա մտաւ Բրէսլաւի համալսարանի լեզուագիտական ֆակուլտէտը, որտեղ անցնելով ամբողջ դասընթացքը՝ Խվոլսոնը անցաւ Լայպցիգ։

Լայպցիգի համալսարանում պաշտպանելով իր դիսսէրտացիան, նա ստացաւ փիլիսօփայութեան դօկտոր կոչուելու իրաւունք։ Մնալով այնտեղ առժամապէս, նա յատկապէս ուսումնասիրեց Քաղդէայի դասական կեանքը, իսկ ապա վերադարձաւ Ռուսաստան և շարունակեց զբաղուել գիտական հետախուզութիւններով, որոնց արդիւնքը եղաւ այն, որ Խվոլսոնը 1856 թ. լոյս աշխարհ հանեց իր աշխատութիւններից մէկը, որը նրան մի անգամից դիրք տուեց գիտական աշխարհում։

1855 թ. նա հրաւիրուեց Պետերբուրգի համալսարանը, որպէս սիրիական քաղդէական լեզուների դասատու արեւելեան ֆակուլտէտում։

1858—1888 թ. թ. Խվոլսոնը նմանապէս աւանդում էր հրէական լեզուն և բիբլիական հնագիտութիւնը Պետերբուրգի հոգևոր ճեմարանում, միաժամանակ դասախօսելով հրէից լեզուն հռոմա-կաթօլիկ ճեմարանում։

*Նրա կեանքը ամբողջովին անցաւ գիտական աշխատութիւնների և հետախուզութիւնների մէջ, ուսումնասիրելով սեմիտական գրականութեան և կուլտուրայի բոլոր ճիւղերը։*

*Նրա շնորհիւ պատմաբանութիւնը ճոխացաւ նորանոր հընագոյն յիշատակարանների երևան հանմամբ։*

*Բացի այս ամենը՝ զբաղուելով հրէական լեզուի ուսումնասիրութեամբ շարունակ, նա հրատարակեց մակաբայեցիների հրէական առաջին գրքի թարգմանութիւնը, համաձայն նոյն գրքի 1180 թ. ձեռագիր աշխատութեան։*

*Հանգուցեալ գիտնականը շատ լոյս սփռեց նաև քրիստոնէական դարաշրջանի առաջին տարիների վրայ, որոնք անկողմնակալ կերպով պատկերացնում էին այն ժամանակուայ քրիստոնեաների և մովսիսականների յարաբերութիւնները։ Նրա գըրչին պատկանող «Յիսուս Քրիստոսի վերջին պասեքային գիշերը» և «Նրա մահուան օրը» աշխատութիւնները պարունակում են իրանց մէջ հիմնական և խորունկ անալիզ պատմական աղբիւրների, որոնք վերաբերում են մի կողմից փարիսեցիների և սադուկեցիների, իսկ միւս կողմից Քրիստոսի յարաբերութիւններին։*

*Հակառակ սովորութական ենթադրութիւնների, հանգուցեալը աջողապէս ապացուցում էր, որ Քրիստոսի մահուամբ շահագրգռուած էին միայն իշխող արիստոկրատ-սադուկեցիները, որի մէջ անմասն էին ժողովուրդը և Նրա ուսուցիչ փարիսեցիները։*

*Խվօլսոնը իր ամբողջ կեանքի ընթացքում պաշտպան էր հրէութեան, խօսելով վերջինիս օգտին, երբ մութ տարրերը նրա վրայ անարդար յարձակումներ էին գործում, որպիսի ուղղութեամբ և նա գրեց մի քանի աշխատութիւններ, որոնք մեծ օգուտ բերին հրէայ ժողովրդին, ցրելով այն ստութիւնները և անճիշտ հասկացողութիւնները, որոնք պտտում էին ժողովրդի մէջ՝ ի վնաս հրէութեան։*

*Մանաւանդ խոշոր դեր կատարեց նրա այն գիրքը, որը վերաբերում էր անհիմն մեղադրանքին հրէութեան դէմ, թէ գործածե՞լ են արդեօք հրէաները քրիստոնէական արիւն, որով միանգամայն և հիմնաւորապէս հերքուեց այդ անարդար և բարբարոս մեղադրանքը, որը արդիւնք էր միջնադարեան կղերի խայտառակ յերիւրանքների։*

Sit tibi terra levis.

Յ. Գ.

---

# ՄԱՏԵՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

«Ոստան», եռամսեայ մեծ պարբերագիր՝ արուեստներու, գրականութեանց և գիտութեանց. Ա. տարի, 1 թիւ, 1911 թ. յունուար, Կ. Պօլիս։

Կարծեմ առաջին անգամն է, որ պօլսահայը հրապարակ է գալիս սոյնանման մի լուրջ պարբերագրով։ Պօլսեցու վրայ մենք յաճախ նայել ենք՝ իբրև զգացմունքների թելադրանքով առաջնորդուողի վրայ։ Եւ յիրաւի՝ նրանց օրաթերթերը բազմիցս տուել են հրապարակախօսութեան այնպիսի օրինակներ, նմուշներ, որոնք կարող էին կնքուել միմիայն «հռահռական լիրիզմ» տիտղոսով։ Միանգամայն այլ բնոյթ է կրում «Ոստանի» առաջին համարը. այստեղ գերակշռողը զգացմունքը չէ, այլ միտքը։ Պարբերագրի խմբագիրները խոստանում են իրերի և երևոյթների նկատմամբ լինել ըստ ամենայնի առարկայական, օբիեկտիվ։ Ուղղութեան տեսակէտից «Ոստանը» ինքը չէ պարզում իր դրօշակը, թէպէտ նրա ընդհանուր բովանդակութիւնը թոյլ է տալիս որոշ եզրափակումներ անելու. այն է, որ նա առաւելն՝ ազգային-առաջադիմական գոյն ունի։ Նախ խօսում է Իզմիրլեան կաթողիկոսի մահուան մասին, համարելով այն՝ «ազգային սուգ»։ Թողնենք սակայն այդ։

«Մարգարէի մը կեանքը» վերնագրով՝ Մ. Շամտանճեանը ունի մի յօդուած, Լ. Ն. Տօլստոյին նուիրած։ Յօդուածագիրը, ինչպէս և շատերը, Տօլստոյի գործերը բաժանում է երկու շրջանի, զուտ արուեստագիտական և փիլիսօփայական, որով իբր կարելի է ըմբռնել նրան։ Մեր կարծիքով, սակայն, դա սխալ է. չէ կարելի արուեստագէտ-Տօլստոյին բաժանել փիլիսօփա-Տօլստոյից, որովհետև նա մի ամբողջութիւն է. երկրորդը առաջինի տրամաբանական հետևողութիւնն է. առաջինով նա մերկացնում էր, երկրորդով սպեղանի առաջադրում...

Տօլստոյի կենսագրութեան և խոստովանութեան համառօտութիւնը, այլ և մի այլ փոքրիկ գրուածքը թարգմանաբար

զետեղել է օր. Զար. Տեմիրճեան, որի թարգմանական լեզուն կարելի է բաւարար համարել։ Թէև սեղմ, բայց լուրջ կերպով է կազմուած Հ. Աճառեանի «Հայ լեզուաբանութեան անցեալն ու ներկան» յօդուածը։ Թուելով հայ լեզուաբանութեան դըպրոցները (թւով եօթը), յօդուածագիրը միակ գիտական դըպրոցն է համարում Հիւբշմանի այն դրութիւնը, թէ հայերէնը հնդեւրոպական անկախ մի լեզու է. «Հիւբշմանի դրութիւնը, ամէն տեղ ընդունուելով, կը կազմէ հայ լեզուաբանութեան վերջնական ու կատարեալ վիճակը»,— ասում է նա։ Մինչդեռ պրոֆ. Մարրի՝ հայերէնը յաբեթական լեզու համարելը Հ. Աճառեանը համարում է արդիւնք թիւրիմացութեան. «Մարրի քննութեան իբր հիմք ծառայող բառերը (խալդեան բևեռագըրերի? Յ. Թ.) կամ սխալ ստուգաբանուած են և կամ զուտ փոխառութիւն են վրացերէնի, ուստի և չեն կրնար ոչինչ ապացուցանել»,— վերջացնում է նա իր ամփոփ, շահեկան յօդուածը։

Հնարաւորութիւն չունենալով երկար կանգ առնելու պարբերագրի իւրաքանչիւր գրուածքի վրայ առանձին առանձին, կը շեշտենք միայն, որ թարգմանական աշխատասիրութիւններից աչքի ընկնող են՝ Գ. Հաուպտմանի «Արևածագէն առաջ» դրաման, թարգմ. Մ. Շամտանճեանի և Մօպասանի «Boule de suif»-ը՝ թարգմանութեամբ Տիգրան Զ.-ի։

Գիտական յօդուածներն են՝ Շ. Պէրպէրեանի «Արդի իմաստասիրութեան գլխաւոր հոսանքները» և Յ. Հինդլեանի «Մանուկին հոգեբանութիւնը»։

Գեղարուեստական ինքնուրոյն խոշոր գրուածքներ առայժմ չէ պարունակում իր մէջ «Ոստանը»։ Կան մի քանի մանր գրուածքներ, որոնցից ուշագրաւն է՝ իբրև տենդենցիօզ՝ Մ. Կիւրճեանի «Արիւնոտ փետուրը»։ Երկու դեռահաս պատանիներ սպանում են մի արագիլ՝ նրա փետուրներից «գրիչ մը ունենալու համար». բայց պոկուած փետուրի ծայրը արիւնոտ էր։ «Արիւն կայ գրչին ծայրը»,— ասում է հեղինակը։ «Արիւնոտ գրիչէն աւելի՝ դանակը ընտրեցի»,— վերջացնում է նա։ Բայց մեր մէջ այդ «դանակը» ոչ միայն ընտրողներ եղան, այլ և սրբագործողներ...

Պարբերագրի վերջին մասում զետեղուած է Եր. Սրմաքէշխանլեանի մի պատմուածքը՝ «Յաջողութեան գաղտնիքը». երևում է, որ հեղինակը պատմելու շնորհքից զուրկ չէ։

Զափազանց սեղմ շրջանակում տեղաւորելով մեր ասելիքը «Ոստանի» մէջ զետեղուած արձակ գրուածքների նկատմամբ, չենք կարող չշեշտել, որ նրա այս համարը միանգամայն

զուրկ է հասարակագիտութեան (սօցիօլօգիայի) և տնտեսագիտութեան վերաբերեալ յօդուածներից։ Մեր կարծիքով՝ պարբերագրերը առաւելապէս պէտք է ուշադրութիւն դարձնեն մեր մամուլի և գրականութեան այդ պակասաւոր կծի վրայ։

Այժմ մի քանի խօսք բանաստեղծական գրուածքների մասին։ «Ոստանը» այդ տեսակէտից աղքատ չէ։ Սիրուն բան է Լ. Եսաճանեանի «Մազերգութիւնը», որ կրում է սոսկ ժողովրդական բնոյթ։ Իսկ միւս ոտանաւորների մէջ միակ աչքի ընկնողը՝ թէ ըստ բովանդակութեան և թէ ըստ ձևի՝ Շուշանիկ Կուրղինեանի երկու գողտրիկ բանաստեղծութիւններն են՝ «Կեանքս ձեզ նուէր» և «Մի՞թէ չէք զգում» վերտառութեամբ։ Երկուսի մէջ էլ լսվում է «քմածին բախտի խորթ զաւակների» անհուն հառաչանքը։

Վերջին տարիներս Շ. Կուրղինեան հետզհետէ յայտնի է դառնում իր պրօլետարական մօտիվներով։ Ափսոս, սակայն, որ ազատ արտայայտուելու հնարաւորութիւնից զրկում են այդպիսիներին շրջապատող աննպաստ պայմանները, որոնք արտայայտուողի բերանին կամ եզոպոսեան լեզու են դնում կամ բիբլիական Զաքարիայի պապանձումը թելադրում... Չէ՞ որ տաղանդի զարգացում պայմանաւորուած է ազատ ու անկանխակալ կերպով արտայայտուելու հետ։

Յ. Թ.

---

Կ. Մօրօզօվա՝ «Ինչո՞ւ են ջախջախուած երջանկութեան թևերը», թարգմ. Յակ. Գենջեանի.—Օսիպ Դիմօվ՝ «Վեստալուհի», թարգմ. նոյնի.—Գ. Այզման՝ «Հանգոյցի լուծումը», թարգ. Օլգա Գենջեանի.—Ա. Կուպրին՝ «Տրամվայում», թարգմ. նոյնի.—Լ. Անտրէեվ՝ «Անզգուշութիւն», թարգմ. նոյնի։
Գները՝ 3—5 կոպէկ են։

Յ. և Օ. Գենջեանները ձեռնարկել են մի շարք թարգմանութիւնների, նպատակ ունենալով հայ ընթերցողին տալ ռուս նորագոյն գրողներից մատչելի նմուշներ։ Գեղեցիկ միտք է դա, խրախուսանքի արժանի մի ձգտում, սակայն կապուած՝ կողմնակի մի շարք պայմանների ու դժուարութիւնների հետ։

Թարգմանութիւններից գողտրիկը՝ Կ. Մօրօզօվայի «Ինչո՞ւ են ջախջախուած երջանկութեան թևերն» է, որի թարգմանութիւնը կարելի է աջողուած համարել։ Հեղինակը, վերացականացնելով «երջանկութեան» գաղափարը, շրջապատի գեղեցկութեանն ու բնական կեանքի հարմօնիային հակադրում է «նա-

խանձով ու չարութեամբ լի» մարդու հոգին։ Կարծես ուզում է ասել Ժ. Ժ. Ռուսսոյի խօսքերով. Թէ Ստեղծողը ամեն ինչ ըստեղծել է խելամտօրէն ու ներդաշնակ, իսկ չարանենգ մարդիկ անգթօրէն խեղաթիւրում ու աղճատում են այդ ստեղծագործութիւնը։ Թւում է, թէ, հեղինակի կարծիքով, մարդը բնութեան շարունակութիւնը կամ մասը չէ, այլ բացասական, աւերիչ հակոտնեան. բնութեան «հրաշագեղ պարտէզը» որպէս թէ իր մէջ արդէն ամփոփած կրում է պատրաստ երջանկութիւնը, իսկ մարդիկ, «նախանձով ու չարութեամբ լի», դիմում են դէպի նա սոսկ որպէս գիշատիչներ ու վանդալներ... Ինչու այդպէս։ Մի՞թէ երջանկութեան գաղափարը ապերջանիկ կեանքի արգասիքը չէ. ապա ուրեմն կարող է երջանկութիւնը վերացական գաղափար լինել։ Երջանկութիւնը, րէալ երջանկութիւնը պէտք է որոնել մարդկութեան ներկայ ապերջանիկ կեանքում կռւող-կոփւող այն աշխատանքի մէջ, որը ոչ «հրաշագեղ պարտէզում», այլ մռայլ ու յեղաշրջող ույժերով յղի աշխատանոցներում է ստանալու իր սաղմային ծագումը՝ աշխատանքի ընդհանրացման ու ազատագրման պօստուլատներով...

Օ. Դիմովի «Վեստալուհին» թոյլ գրուածք է և կրում է սուբյեկտիվ բնոյթ։ Դիմովը ռուս գրականութեան մէջ յայտնի է որպէս խիստ սուբյեկտիվիստ և մոլի դեկադենտ։ Ըստ որում անհրաժեշտ է լուրջ ընտրութիւն անել նրա գրուածքները թարգմանելիս։ Կարդալ այդօրինակ գրուածք գուցէ միայն նրա հեղինակի հետ ծանօթանալու նպատակով, այդ միանգամայն այլ հարց է։

Բովանդակութեան կողմից միւս երեք թարգմանութիւնները, որոնք կատարուած են Օ. Գենջեանի ձեռքով, հետաքրքրական են։

«Տրամուայը»—Կուպրինի—դա իսկապէս կեանքի ճանապարհն է. ծնուելու օրից դու տրամվայումն ես, քո կեանքը՝ դա քո տոմսակն է. հէնց որ կը գայ «տոմսակիդ վերջը», կը գայ և քո վախճանը։ Բայց տրամվայի կարգ ու կանոնը չէ թոյլ տալիս իջնել, մինչև նա չկանգնի. ուստի տոմսակի զօրութիւնը պահպանվում է մինչև նրա կանգ առնելը համապատասխան տեղում։ «Բայց աղաչում եմ միայն մի բան՝ չիջնել տրամվայից մինչև նրա վերջնականապէս կանգնելը,—ասում է Կուպրինը.—անմիտ, տգեղ և յիմար բան է»։ Այս խօսքերը, ըստ երևոյթին, ակնարկներ են անձնասպանութեան գաղափարը կըրողների համար։

Բնորոշ ու ամփոփ են իրանց բովանդակութեամբ «Հան-

գոյցի լուծումը» և «Անզգոյշութիւնը»։ Ափսոս, որ թարգմանութիւնը տեղ-տեղ անհարթ է. ցանկալի էր, որ ապագայում լինելիք թարգմանութիւնների ժամանակ խոշոր նշանակութիւն տրուէր թէ այդ առաջնակարգ հանգամանքին և թէ սրբագրութեանը։

Կրկնում ենք՝ թարգմանիչների ձգտումը միանգամայն արժանի է ամեն խրախուսանքի, և մենք յանձնարարում ենք վերոյիշեալ սերիան հայ ընթերցող հասարակութեանը։

Յ. Թ.

Յ. Գ.—Քանի որ վերոյիշեալ թարգմանիչները խոստանում են հետզհետէ լոյս ընծայել Սերգէեվ-Ցէնսկիից, Սոլոգուբից, Բ. Զայցէվից և այլ նորագոյն ռուս գրողներից թարգմանութիւններ, մենք խորհուրդ ենք տալիս մեծ զգուշութեամբ վարուել նիւթեր ընտրելիս. որովհետև դրանց գրուածքների մէջ, մանաւանդ ընդարձակ, կան այնպիսիները, որոնք՝ գրուած լինելով դեկադանս-մօտերնիզմի ազդեցութեան տակ՝ անյոյս յոռետեսութեան, մեղկ հեշտասիրութեան, կոպիտ սուբիեկտիվիզմի գաղափարներով են շաղախուած։

Նոյն

—

Petite Bibliothèque Arménienne, publiée sous la direction de M. F. Macler. Minas Tchéraz, „NOUVELLES ORIENTALES", préface de F. Macler. Paris, 1911.

Հայկական Փոքր Մատենադարան, հրատարակութիւն ընդ վարչութեամբ պ. Ֆ. Մակլէրի։ Մինաս Չերազ, «ԱՐԵՒԵԼԵԱՆ ՋՐՈՅՑՆԵՐ». առաջաբան Ֆ. Մակլէրի, Պարիզ, 1911.

Ֆ. Մակլէր անցեալ տարուանից ձեռնարկել է հրատարակել «Հայկական Փոքր Մատենադարան» վերնագրով մի շարք ինքնուրոյն և թարգմանական աշխատութիւններ վերաբերեալ հայ պատմութեան և գրականութեան։ Նա մինչև այժմ հրատարակել է Շիրվանզադէի «Ցաւագար» երկի թարգմանութիւնը, Օրմանեանի «Հայոց Եկեղեցին», այժմ հրատարակում է Մինաս Չերազի «Արևելեան Զրոյցներ» վերնագրով պատմուածքները և տպագրութեան համար պատրաստ ունի «Հայաստանի հեքիաթները և լեգենդաները»։

Ներկայ գրքին Ֆ. Մակլէր կցել է մի ընդարձակ առաջաբան Մինաս Չերազի՝ իբրև գրական դէմքի և գործչի մասին։ Ցայտնելով որ «Զրոյցների» մի քանիսը հրատարակուել են

Անգլիայի և Ֆրանսիայի պարբերական հանդէսներում, երբ Մ. Ջերազ ստիպուած էր ապրել Եւրոպայում, աշխատելով իր ազգի ազատագրութեան համար, Մակլէր տալիս է Ջերազի կենսագրութիւնը, խօսում է նրա գրական-բանասիրական և քաղաքական աշխատութիւնների մասին («Գրական Փորձեր», «Ազգային Դաստիարկութիւն», «Թէ ինչ շահեցանք Բերլինի վեհաժողովէն», «Կրթական Դաստիարկութիւններ», «Գրիչ և Սուր», «Նոր Տաճար», և այլն), և կանգ է առնում նրա «L'Arménie» թերթի վրայ, որ սկսեց հրատարակել առաջ Լօնդօնում, յետոյ Պարիզում, և նրա գործունէութեան վրայ յօգուտ հայկական հարցի։

«Արևելեան Զրոյցները» բաղկացած են 13 պատմուածքներից—Քառասուն կին ունեցող փաշան, Մուրացկանը, Ծերունի Լեռնականը, Նոր Տարին Հայաստանում, Վերջին Պարը, Դանգուղի, Օհան Բէիգ, Դէօնմէ Էմինէ, Շահսանէ, Լևոն, Արմենակի, Քարիբէից Սկիւլա և Արմէն։ Այս պատմուածքներից առաջին տասն-մէկ հատը տպուած են ֆրանսիական զանազան հանդէսների մէջ, վերջին երկուսը՝ նոր են լոյս տեսնում։ («Արմենակի» պատմուածքի հայերէն թարգմանութիւնը անցեալ տարի տպուեց «Արօրի» № 3-ում)։

Ֆ. Մակլէրի հրատարակութիւնը հնարաւորութիւն է տալիս եւրոպացիներին ծանօթանալ հայկական մի ինքնուրոյն տիպի և մի արդիւնաւէտ գործչի գործունէութեան հետ, մի գործչի, որ իր ամբողջ կեանքը մաշել է հայ ժողովրդի դատը պաշտպանելու քաղաքակիրթ աշխարհի առաջ։

Հ. Ա.

---

Խմբագիր-հրատարակիչ Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

Տպարան «Է Պ Օ Խ Ա», Գանովսկայա № 3.

# ՆՈՐ ՍՏԱՑՈՒԱԾ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

—

1) Պայքար, վէպ Նար-Դոսի, Թիֆլիս, 1911 թ., էջ 320 գ. 75 կ.։
2) Պատմուածքներ, Մաղաք Պետրոսեանի, II գիրք, Թիֆլիս, 1911 թ., էջ 71, գ. 30 կ.։
3) Գիւղացի Բիւտնէրը, Ֆօն-Պօլէնցի, թարգ. գերմ. Սեդրակ Թառայեանցի, Թիֆլիս, 1911 թ., էջ 531, գ. 1 ր. 25 կ.։
4) Ոսկէ սանդուխք, Ֆեօդոր Սօլօգուբի, թարգմ. Յակոբ Գէնջեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 40, գ. 8 կ.։
5) Стихотворенія, Д. Д. Пагировъ-ի, Թիֆլիս, 1911 թ., էջ 88, գ. 50 կ.։
6) Համապատում, չորս աւետարաններուն պարունակութիւնը շարայարելով և համաձայնելով և բացատրելով պատմուած, պարզաբանեց Մաղաքիա արքեպ. Օրմանեան՝ նախկին պատրիարք, պատկերազարդ, Կ. Պօլիս, 1911 թ., էջ 1104, գ. 25 ղրուշ։
7) Ուրարտու կամ Հայաստանի նախաբնիկները և իրենց քաղաքակրթութիւնը, Ա. մաս, էջ 16.
8) Ո՞րն է իսկական Հռոմոսի վանքը, հնագիտական ուսումնասիրութիւն Թ. Թօրամանեանի, Ալէքսանդրօպօլ, 1911 թ., էջ 16, գ.?
9) Տղամարդկանց և կանանց գաղտնի հիւանդութիւնների բժշկարան, նկարներով, կազմեց Արտեմ (Յարութիւն) Եսայեան, Թիֆլիս, 1911 թ., էջ 153, գ. 50 կ.։
10) Բամբակը և նրա մշակութիւնը, նկարներով, Ա. Աթանասեանի, Թիֆլիս, 1910 թ., էջ 96, գ. 40 կ.։
11) Կօօպերատիվ սպառողական ընկերութիւնը, Յ. Լազարեանի, Բագու, 1911 թ., էջ 121, գ. 20 կ.։
12) Կարլ Մարքսը (կենսագրական), Ս. Մուրատեանի, Պարիզ, 1910 թ., էջ 16, գ. 20 սանտիմ։
13) Քարոզչական թոթովանքներ, Գ., Բենիկ վարդապետի, Վաղարշապատ, 1911 թ., էջ 108, գ. 20 կ.։

14) Հայագիտութիւնն Արեւմտեան Եւրոպայում, Կ. Կոստանեան-ցի, Թիֆլիս, 1910 թ., էջ 182, գ. 1 ր.։

15) Բժշկուողներ, վօդըվիլ 1 գործ, թարգմ. Յարութիւն Օրդուեանցի, Թիֆլիս, 1911 թ., էջ 12, գ. 10 կ.։

16) Քեֆ անողին քեֆ չի պակսի, պատկերազարդ, արևելեան զրոյց Յովհ. Թումանեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 15, ձրի յաւելուած «Հասկեր» ամսագրի։

17) Պապն ու շաղգամը, նկարազարդ, Աթ. Խնկոյեանի, Թիֆլիս, 1910 թ., էջ 7, ձրի յաւելուած «Հասկեր» ամսագրի։

18) Գարուն, գրական-գեղարուեստական ալմանախ, II գիրք, Մոսկվա, 1911 թ., էջ 203, գ. 1 ր.։

19) Իմ տօնածառը (չարաճճի Արմուշիկի արկածներից), պատկերազարդ, Րադամէսի, Թիֆ., 1911 թ., էջ 16, գ. 30 կ.։

20) Աստուած ճշմարտութիւնը տեսնում է, բայց շուտ չէ յայտնում, Լեվ Տոլստոյի, թարգմ. Ջալալ Տէր-Գրիգորեանի, Թիֆլիս, 1910 թ., էջ 8, գ. 3 կ.։

21) Լեվ Տոլստոյ, կենսագրական ակնարկ, ամփոփեց Ջ. Տէր-Գրիգորեան, Թիֆլիս, 1910 թ., էջ 20.

22) Աղբիւր մանկական ամսագրի ներկայ տարուայ № № 2 (փետրուար) և 3 (մարտ), Թիֆլիս։

23) Հասկեր մանկական ամսագրի ներկայ տարուայ № № 2 (փետր.), և 3 (մարտ), Թիֆլիս։

24) Երկիւղն ու անվեհերութիւնը սկզբնական դաստիարակութեան ժամանակ, մասն Ա., Կապտերեվի, փոխադր. Մ. Ասիլեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 32, ձրի յաւելուած «Հասկերի»։

25) Առողջապահ, հրատարակութիւն «Աղբիւր-Տարազի», № № 2 (փետր) և 3 (մարտ), Թիֆլիս։

26) Տարազ պատկերազարդ հանդէսի № 3-ը (մարտ), Թիֆլիս։

---

ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

ՆԵՐԿԱՅ 1911 ԹՈՒԱԿԱՆԻ

II ՏԱՐԻ „ԱՐՕՐ“ II ՏԱՐԻ

# ԸՆԴՀԱՆՈՒՐ-ԳՐԱԿԱՆ, ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ, ԳԻՏԱԿԱՆ, ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԵՒ ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ

# Ա Մ Ս Ա Գ Ի Ր

*«ԱՐՕՐԸ» հրատարակուելու է Թիֆլիսում խմբագրութեամբ Հ. Առաքելեանի և աշխատակցութեամբ ռուսահայ, թիւրքահայ և պարսկահայ գրողների։*

*«ԱՐՕՐԻՆ» աշխատակցելու են՝*

*Ալպօյաճեան Ա., Աթանասեան Ս., բժշկ. Աղասարեան Բ., Ատրուշան, բժշկ. Արծրունի Վ., Առաքելեան Արշակ, Աթաբէգեան Մ., Բագրէն եպիսկոպոս Կիւլէսէրեան, Բաշալեան Լեւոն, Բաշինջաղեան Գ., Բաբայեան Խ., Գասպարեան Յարութիւն, դօկտոր Գրէնֆիլդ Ջէմս, Դանիէլեան Ղ., Դը-Գուբերնատիս Անջէլլօ, սենատօր (իտալական պրօֆէսօր), Եզեկեան Ա., Եսայեան Զ., Էմմանուէլ ք. Նազարեան., Թէքէեան Վ., բժշկ. Թիրեաքեան Յարութիւն խան, Խանազատ Ռ., Խուրշիդ, Կալխաս, Կրասիլնիկեան Կ., Ղուլեան Ա., Մալխասեան Ս., Մալխազեան Ա., Մակլէր Ֆ. (ֆրանսիացի հայագէտ), Մեսրոպ ք. Մելեան, Յարութիւնեան Ի., Նաթանեան Միք., Նազարէթեան Ա., Նամալեան, բժշկ. Շահբազեան Ա., բժշկ. Շխեան Ա., Շահրիար, Չալխուշեան Գ., Չախմախսազեան Յ., Սարուխան Ա., Սուրխաթեան, Սամուէլեան Խ., Սպէնդիարեան Յ., պրօֆէսօր Վեսելօվսկի Ի., Տէր-Մինասեան Ե., Րօֆֆօր Ստ., Քալանթար Ա., Կարա-Դէրվիշ։*

*«Արօրի» բաժանորդագինն է «Մշակի» բաժանորդների համար 4 ր.։ Ոչ-բաժանորդները վճարում են 2 ր. աւելի։*

*Դրամ և թղթակցութիւն ուղարկել այս հասցէով՝*

Тифлисъ, редакція журнала „АРОР“.

Tiflis, Rédaction de la revue arménienne «Aror».

*Թիֆլիս, «Արօր» ամսագրի խմբագրութիւն*

Խմբագիր-հրատարակիչ՝ Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

# Ա Ր Օ Ր

## ՄԻԱՄՍԵԱՅ ՀԱՆԴԷՍ

ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՐԱԿԱՆ,

ԳԻՏԱԿԱՆ-ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ

ԵՒ ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ

№ 4

II տարի

1911

ԹԻՖԼԻՍ

## Ա Պ Ր Ի Լ

Էջ **ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ**

Գրական
ԳԻՏԱԿԱՆ
Հասարակական-
ՔԱՂԱՔԱԿԱՆ
խաղաղասէր.
ՀԱՆԴԷՍ

# ԱՐՕՐ

ԵՐԿՐՈՐԴ տարի
ԹԻՖԼԻՍ
1911 Թ.
ԱՊՐԻԼ
№ 4

# ՕՐԱՎԱՐՁ

---

*Անչափ ձիւն էր եկել։ Սպիտակ սաւանի տակ կոկուել էր ամեն խորտ ու բորտ, բլրակ ու փոսեր։ Ամեն ինչ տխուր էր, սառած։ Միայն քամին էր խնդում ու սուլում վայրենի պտոյտներով։*

*Լուռ էր կայարանը, կարծես մեռած։ Գնացքը չէր եկել առաւօտուանից։*

*Գիծը խանգարուած էր։*

*Մի խումբ բանուորներ երևում էին հեռւում։ Գիծն էին մաքրում երկայն թիակներով։ Առաջները ձիւնային պատն էր, փխրուն ու անվերջ, յետևը՝ ռէլսները բացուած ու թեթև ժանգոտած։ Գեղեցիկ էին հեռուից բանուորները, որպէս շարժուն սև կէտեր անշարժ սպիտակ ֆոնի վրայ։ Նրանց շարժումները եռանդ էին թմրած բնութեան մէջ, աշխատանքը՝ կեանք՝ տխրող ամայութեան մէջ։ Լռութիւնը մարդկային ձայներով էր ընդհատվում։ Այնչափ տարբեր էին այդ ձայները. և երգերի կտորներ էին լսվում նրանց մէջ, և բարձր բացագանչութիւններ, նկատողութիւն կամ խրախուսանք մէկ-մէկի, և ծիծաղ, սրախօսութիւն, և գանգատ, անբաւականութիւն չարքաշ կեանքից, և աշխատանքի հպարտութիւն, և տանջանքի կսկիծ։*

*Բայց գոհ էին բանուորները։ Ձիւնն օգնում էր նրանց, աշխատանք էր տալիս, ապրելու հնարաւորութիւն։ Ձմրան օրերին՝ դաշտից զրկուած, գիւղումն էլ անգործ՝ գալիս էին աշխատելու մօտակայ կայարանը։ Գալիս էին չունևորները, ապրուստով խեղճերը, որոնց կամ ալիւրն էր տանը պակասում, կամ անհրաժեշտ հագուստը, կամ վառելիքը։ Գալիս էին երբեմն*

երկուսը-երեքը մի տնից, երբեմն հայր ու որդի, միայն թէ աշխատանք լինէր, ապրելու, գարուն ընկնելու հնարաւորութիւն։ Փոյթ չէր, որ մի օրուայ, երկու օրուայ գործ էր լինում։ Միայն թէ յաճախ գործ լինէր։ Օրավարձն էլ թէպէտ աննշան էր, բայց դրան էլ էին ուրախ։

Այս անգամ երկաթուղու գիծը պիտի մաքրուէր, որ մի քանի վերստի վրայ խոր ձիւնով էր ծածկուած։ Շատ բանուորներ էին պէտք հաղորդակցութիւնը շուտով վերականգնեցնելու համար։ Գիւղից շատերն էին եկել։

Եկել էր և Թորոսը՝ իր Սարգիս որդու հետ։ Միւս որդին քաղաքի գործարանումն էր։ Չնայած տարիքին՝ Թորոսը դեռ աշխոյժ էր զգում ձեռների ու թիկունքի մէջ և աշխատում էր երիտասարդների նման։ Հեշտ ու դիւրին խրում էր թիակը ձիւնի մէջ և կարճ խփոցով մեծ տալաշ պոկելով ազատ ու թեթև գցում էր մի կողմ։ Կողքին՝ հարևան Մանուկն էր և Կաբոյենց Դանիէլը, երկուսն էլ միջահասակ տղամարդիկ։ Սարգիսը ուրիշ խմբակումն էր, յետևում։ Աշխատում էին ոչ-շտապելով, բայց շարունակ։

Երբեմն-երբեմն, երբ ձեռները սառում էին կամվում, կանգնում էին, կրծքին թիակը յենում ու բերնով բռան մէջ անընդհատ փչում, մինչև տաքանային բացուէին մատները, կապտած ծայրերը։

Երբեմն էլ վերակացուի ձայնն էր լսվում սրան-նրան նկատողութիւնով ուղղած։ Յաճախ խեղճ Մամբրէն էր ընկնում վերակացուի աչքը, և այդ հանգամանքը զուարճացնում, խնդացնում էր երիտասարդներին։ Բախտն այնքան էր ժպտացել Մամբրէին, որ նա շլտիկ էր ու դէմքով անմազ, ունէր մի անզաւակ չօլախ կին, որը սիրում էր հագնուել ու կոկ չկթել։

Բայց Մամբրէն մոռացվում էր բոլորովին, երբ գլում էր յանկարծ Սիմօնը, գիւղի երգիչն ու երաժիշտը։ Առողջ հուժկու կրծքից դուրս էր թափվում, որպէս կրակ, գեղջկային երգը ինքնանման գեղեցիկ ելևէջներով և տաքացնում, զմայլեցնում էր ամենի սիրտը։ Երգը մոռացնել էր տալիս և՛ ցուրտը, և՛ տանջանքը, և՛ կարիքը, խեղճութիւնը, գրաւում էր բոլորին, գերում շատերին, ոգևորում և, որպէս ունիսօն, «ջա՜ն, ջա՜ն» բարձրաձայն բացագանչութիւններ առաջացնում շատերի կողմից։ Երգի հրային հոսանքը աշխոյժի, եռանդի հոսանք էր առաջացնում շատերի սրտում և ոյժ տալիս յոգնած թևերին, ջլուտ բազուկներին։

*Մօտ կանգնած վերակացուն լուռ էր մնում այդ մոմենտներում։*

*Նոյն իսկ նրա վրայ ազդում էր բանուորների երգն ու աշխոյժը, միմեանց խրախուսանքը։*

*Երիտասարդները և՛ աշխատում էին, և՛ կատակներ անում՝ կամ մրցում էին, փորձում ձիւնի տալաշն աւելի ճարպիկ, աւելի հեռու մէկ-մէկից գցել, կամ վերակացուից աննկատ խանգարում էին մէկ-մէկի, թափում կրկնապատկում էին միւսի թիակի ծանրութիւնը իր թիակի ձիւնով և առատ ծիծաղով ու սրախօսութիւններով աշխատանքը շարունակում։ Սրախօսութիւնները, երկմիտ ակնարկները, մէկ-մէկի ձեռ առնելն ու ծիծաղելը անպակաս էին այդ մոմենտներում։ Մանաւանդ Սարգիսն ու հասակակից Արտաշը, որոնք՝ խորամանկ ժպիտը դէմքներին՝ միշտ մի բան կը հնարէին։ Այդ սրախօսութիւնների ու ակնարկների նետերը յաճախ ուղղվում էին խեղճ Մամբրէին. բայց սահմանը չէին անցնում. երիտասարդները քաշվում էին ծերերից։*

*Բայց երբեմն էլ տիրում էր լռութիւնը։ Ոչ Սիմոնն էր հնչում, ոչ էլ սրախօսութիւններ էին անում մէկ-մէկի։ Աշխատում էին լուռ, մտազբաղ։ Այդ մոմենտներումն էլ կարիքն էր իր ճիրաններով ճնշում միտք ու զգացմունքն ամեն մի բանուորի։ Այնքան ուժեղ էր կարիքը, այնքան անբաժան։ Կարիքն էր, որ ձմրան ցուրտ օրին բանուորներին գիւղից նետել էր կայարան՝ գծի վրայ։ Կարիքն էր, որ բաւականացնում էր նրանց փոքրիկ օրավարձով։ Կարիքն էր, որ տարիքաւոր Թորոսին անգամ ստիպել էր գալ աշխատանքի։ Նրա սառած, լուռ աչքերում այնքան խորութիւն կար։ Երբեմն անցեալի վերապրումի մի կայծ կը փայլէր այդ խորութեան մէջ և կրկին հանգստով կը սքօղուէր։*

*Շատ էր տեսել ու ապրել Թորոսն իր կեանքում։ Աւելի լաւ օրեր էր տեսել, բայց և աւելի դառն օրեր էր քաշել, քան թէ հիմա։ Բայց գոհ էր իր կեանքից. կենդանի է, ապրում է, ընտանիքի տէր է, փոքրիկ թոռներ էլ ունի։ Պատուաւոր ծերունիների շարքը դեռ չէր կամենում անցնել։ Եկել էր աշխատանքի, որովհետև Սարգիսը դեռ շատ երիտասարդ էր, երկու տարի ունի մինչև զինուորակոչութիւնը, զգալի օգնութիւն չի կարող անել. իսկ Գրիգորը, մեծ որդին, նոր էր գործի մտել, պարապ էր գործադուլի պատճառով։ Եկել էր աշխատանքի, բանում էր օրով, որպէսզի քիչ բան-ման առնի, ուրախացնի գերդաստանը բարեկենդանին, մանաւանդ իր թոռնիկին, չորաճճի*

Շողիկին, որին անչափ սիրում է պար ածել, որը խաղում է ու քաշում նրա միրուքից փափլիկ մատներով։ Եւ Թորոսը գոհ սրտով ու մտքով շարունակում էր մաքրել ձիւնը։ Երբեմն միայն յետ էր նայում, տեսնելու՝ թէ աշխատում է Սարգիսը և ինչպէս։ Սրընթաց քամին մինչև անգամ չէր վրդովում նրան, խաղում էր նրա սպիտակած միրուքի հետ, երբեմն ձիւնափոշով մտնում մազերի արանքը, բերանի գոլորշուց փոքրիկ սառցածածկներ կիտում բեխերի վրայ։ Բայց ծերունին սովոր էր այդ ամենին և մնում էր անտարբեր։

Նոյնպէս անտարբեր էր հարևան Մանուկը, որ առողջակազմ զրինդ տղամարդ էր և աշխատում էր անդուլ։ Եթէ ֆիզիքական աշխատանք չունենար, իրան վատ կը զգար։ Չը նայած որ մենակ էր, երեխաները դեռ չէին հասել, բայց նա գիւղում ապրում էր միջակ։ Վիճակով շատ գոհ էր։ Բախտը նրան մի խելօք, աշխատասէր կին էր տուել։ Նրա տունը չէն էր Աննայի շնորհիւ։ Աննան և՛ կով էր կթում, և՛ կրակ անում, հաց թխում, և՛ երեխանց շորերը կարում, կարկատում, մաքուր պահում, և՛ գիւղի հարուստ տներն էր գնում, որևէ բան գործում ու նոյնպէս աշխատում։ Երբ Մանուկը տուն էր գալիս երեկոյեան, միշտ տաք, հանգիստ կը զգար իրան իր տանը։ Ամառն էլ կինը մարդու հետ հաւասար կաշխատէր՝ կը փոցխէր դաշտում, կամ կը կալսէր տան առաջ։ Այդ բաւականութիւնն էր, որ ցոլում էր Մանուկի առոյգ դէմքի վրայ և անխոնջ դարձնում գործի մէջ։ Մանուկն ի հարկէ առաջ էր տալիս և՛ Թորոսին, և՛ Դանիէլին և անկեղծ օգնում էր Թորոսին՝ մեծ տաշեղները յաճախ ինքն էր շպրտում, մանրունքը նրան թողնում։

Դանիէլն առանձին էր մաքրում։ Բայց Մանուկի ոյժի կէսի չափ հազիւ ունենար։ Տխրադէմ էր Դանիէլը։ Մէկ տարի էր, ինչ բաժանուել էր եղբօրից։ Երկու ամիս էր, որ հիւանդացել ու մեռել էր նրա մինուճար որդին, նրա յոյսը, նրա թևն ու թիկունքը ապագայի։ Երկու փոքրիկ աղջիկ ունի այժմ։ Անցած շաբաթն էլ հորթը սատկեց ու կովը ցամաքեց կաթից։ «Երբ սևը բոլորի մի տուն, էլ հեշտ չի հեռանայ այնտեղից»,—շեշտում էր ինքն իրան Դանիէլը։ Բայց ինչ արած, գուցէ այդ էր բարին. փառք Աստուծուն, առողջ է, աչք ունի, ձեռք ունի, կարող է աշխատել։ Միայն երբեմն Սիմօնի ձայնն էր տխրեցնում նրա սիրտը. դեռ թարմ էր վէրքը՝ որդու կորուստը, չէր մոռանում։ Ուրախութեան կամ սիրային մօտիվները, որոնք լսվում էին Սիմօնի երգերի մէջ, նրան տրտմեցնում, վշտացնում էին։ Կորուստըն աւելի զգալի էր թւում այդ ժամանակ, և նա խոր «ա՜խ»-

ով վերյիշում էր որդուն, որին մի քանի տարուց յետոյ մտագիր էր պսակել։

Իսկ Սիմօնը չէր զգում Դանիէլի ապրումը և անհոգ, որպէս երգիչ, գլում էր մի գլուխ։ Երգը նրա հոգու նուիրական մասն էր։ Նա դեռ մանուկ հասակից սիրեց երգը։ Բնութիւնն էլ նրան ձայն էր շնորհել։ Տարիների ընթացքում ազատ սարերում ու հովիտներում նա երգում էր շարունակ ու ձայնն աւելի քաղցրացնում, մշակում, որքան կարելի է մշակել գիւղական մթնոլորտում։ Դեռ մանկութիւնից, երբ ընկերներով գառներ էր արածացնում կանաչ ու դալարուն լեռնալանջերում, նա սիրով, զգացմունքով էր լսում քիւրդ Հասոյի, գիւղի հովուի, սրինգը։ Յափշտակիչ էր սրինգը առաւօտները մանաւանդ, երբ կը լսուէր հեռաւոր լեռնակատարներից բաց յստակ օդի մէջ, յստակ երկնի տակ։ Խոտերն ու ծաղիկները բարակ հովի հետ կարծես թրթռում էին ու զմայլվում։ Զմայլվում էր Սիմօնն ու նախանձում Հասոյին։ Բայց ինքն էլ փորձեց սովորել, շուիից ածել սկսեց՝ անցնելով յետոյ միւս տեսակներին։ Եւ մի քանի տարում նա վարժուեց ու անյաղթ դարձաւ գիւղում իր արուեստով։ Սիմօնն ինքն էր յուզվում, զգացվում և զգալ էր տալիս լսողին։ Գիտէր նա ուրախացնել և լացացնել։ Նրան ուրիշ գիւղեր էլ էին հրաւիրում, երբ մի խնճոյք, հարսանիք էր լինում։ Սիմօնը գրել-կարդալ էլ գիտէր. եղբայրն էր սովորեցրել, որ պրիստաւի մօտ գրագիր էր։ Այդ հանգամանքն էլ մի կողմից էր բարձրացնում նրան գիւղի մէջ։ Սիմօնն ունէր և երգարան,—եղբայրն էր նուիրել,—որից կերգէր նոյնպէս սիրով, ի հարկէ ժողովրդական կտորները միայն։ Այդ Սիմօնն էր, որ գործի, աշխատանքի մէջ էլ չէր մոռանում իր երգը և զուարճացնում էր իր գիւղացիներին։

Գրաւվում էին առանձնապէս երիտասարդները, երբ երգի մէջ սիրային մօտիֆներ էին ցոլում։ Ամէն մէկը մի «քար» ունէր, մի սիրուհի գիւղում, որի համար էր միայն բաբախում դեղջկային առողջ սիրտը։ Բայց գիւղական այդ երիտասարդ սիրտը տարբերվում էին իրարից՝ սիրելու աստիճանով։ Սարգիսն, օրինակ, հանգիստ էր սիրում ու յաճախ տեսնում Մանուկի եղբօր աղջկան. նրան դուր էր գալիս և Մակարի աղջիկը։ Այն ինչ՝ ընկերը, Արտաշը, ուրիշ տեսակ էր։ Նրա սրտերը միանգամից կպել էր Թովմասի աղջկան, սիրուն Աշխէնին։ Տարուց աւել էր, որ սիրում էր Աշխէնին, որին հեռուից կը ճանաչէր մազերի երկայն ու ճոխ հիւսից։ Տանջվում էր Արտաշը, բայց հայրը հակառակ էր. Թովմասը խեղճ ու չու-

նոր էր գիւղում։ Հայրն առաջարկում էր Ասլանեանցից աղջիկ ուզել, որի ազգականները և՛ շատ են, և՛ ուժեղ՝ գիւղի մէջ։ Բայց Արտաշի սիրտն Աշխէնին էր ուզում։ Վճռել էր հեռանալ տնից, քաղաք գնալ, գործի մտնել, փող աշխատել և նոր հօրը կտրական խնդրել ամուսնացնել Աշխէնի հետ։ Աշխէնից խօսք էր առել. Աշխէնն էլ նրան էր սիրում, կը սպասէր։ Արտաշը շուտով կատարելու էր իր վճիռը։ Սպասում էր Գրիգորին, Սարգսի եղբօրը, որ երբ նա ժամանակով տուն գայ, հետը գնայ քաղաք, ծառայի։

Սարգիսը գիտէր այդ գաղտնիքը։ Նրանք ոչինչ չէին թագցնում մէկ-մէկից և խոր պահում իրար մէջ ամեն մի գաղտնիք։ Նրանք մտերիմ ընկերներ էին. դեռ գառներ արածացնելու ժամանակից միասին կը լինէին, խաղերի մէջ կօգնէին մէկ-մէկի, կռիւ ծագելիս կը պաշտպանէին իրար։ Սարգիսն էլ, Արտաշն էլ, ինչպէս և միւս երիտասարդները գիւղի, սիրում էին Սիմոնին, սիրում էին նրա երգը, լսում էին մեծ հաճոյքով. զգում էին նրա երգի, նրա ձայնի մէջ անվերջ զգացմունքներ։ Այդ էր պատճառը, որ երբ Սիմոնը սիրային երգ էր զլում, Արտաշը մոռանում էր իր սրախօսութիւնն էլ, կատակն էլ, յուզվում էր ու Սարգսին նայում և թիակը կրծքին պահած մնում էր անշարժ, մտամոլոր։ Բայց վերակացուի ձայնն ուշքի էր բերում։ Արտաշն իսկոյն եռանդով շարունակում էր աշխատանքը։

Վերակացուն, Սամսոնը, որ յաճախ անց ու դարձ էր անում, մօտենում այս ու այն խմբակին, միջին տարիքով քիչ նիհար մարդ էր։ Գրել-կարդալ ազատ գիտէր, հաշիւների մէջ էլ գլուխ ունէր։ Սրտով բարի էր, բայց գործի մէջ խստապահանջ։ Նրա հետ էլ մեծերն էին խիստ, կարգ ու կանոն էին պահանջում, ժամանակին աւարտած գործ։ Բանւորները յարգում էին նրան, լսում միշտ։ Գիտէին, որ ոչ մէկի չէր մերժի, երբ որևէ գործ լինէր ձեռի տակը։ Երբեք ոչ մէկի օրավարձը չէր կտրի և իշխանութեան առաջ հարկաւոր դէպքում կը նկարագրէր բանւորի ծանր աշխատանքը, դրութիւնը։ Ընտանիքէտէր էր Սամսոնը։ Որդին արդէն սովորում էր դպրոցում։ Նրա իղձն էր գիմնազիա մտցնել որդուն, կանոնաւոր ուսում տալ, որ անուանի մարդ դուրս գայ վերջը։ Դրա համար սուղ էր ապրում, ստացած ռոճիկից մի բան յետ գցում որդու համար, ապագայի համար։

Սամսոնը շատ էր տեսել սև օրեր, տարել էր տաք ու

ցուրտ, տօթ ու սառնամանիք։ Նա իր երիտասարդութիւնը և աշխատանքի մթնոլորտում էր անցկացրել, մօտիկից գիտէր բանուորի չարքաշ կեանքը։ Այդ էր պատճառը, որ ամեն կերպ աշխատում էր իր որդուն հանգիստ, լաւ կեանքի արժանացնել։ Նոյնպէս այդ հանգամանքին էր վերագրվում այն, որ նա դէպի բանուորները, դէպի խեղճ մարդիկ կարեկից էր, արդար ու ճշմարտութիւն ճանաչող։ Նրա պէս կարեկցող ու բարեսիրտ մարդը միայն անկեղծ կը ժպտար՝ երբ բանուորների աշխոյժին կը նայէր, կը զգացուէր սրտի խորքում՝ երբ աշխատողի երգն աշխատանքի մէջ կը լսէր։ Եթէ նկատողութիւն էլ կանէր սրան-նրան, դրանով կը հասկացնէր իր պաշտօնը, կը շեշտէր, որ գործը հարկաւոր է ժամանակին աւարտել և իշխանութեան առաջ պարզերես լինել։

Եւ այդպիսով բանուորներն ու վերակացուն մէկ-մէկի հասկանալով, մէկ-մէկի զիջելով առաջ էին տանում գործը։

Գիծն աննկատ բացվում էր, երկարում։ Թիակների հարուածների տակ ձիւնը թեթեւանում էր, անհետանում։ Բայց դեռ շատ կար մաքրելու։ Դժուար թէ երեք-չորս օրից շուտ երևար գնացքը։ Ուրախ էին բանուորները. կօգտուէին նիւթապէս։

Արդէն մօտենում էր երեկոն։ Բանուորներն արդէն զգում էին օրավարձի քաղցրութիւնը. աշխատեցին առաւօտուանից, այժմ կը ստանան իրանց հասոյթն ու տուն կը գնան ազատ, ուրախ։ Առաջուց արդէն զգում էին ստանալիք դրամի զրնգոցը։ Այնքան խոր, այնքան ազնուացնող էր արդար աշխատածի հաճոյքը։ Այդ հաճոյքը աննկատ էր դարձնում նոյն իսկ ցուրտը։ Իսկ ցուրտը բաւական սաստկացել էր։ Քամին փչում էր ուժգին։ Այժմ թողել էր իր մեղմութիւնը, խորամանկ սառ զգուանքները։ Կատաղած էր մարդկային անտարբերութիւնից։ Այժմ առաջ էր սուրում սրընթաց, անողորմ դիպչում էր սրան-նրան վայրենի պտոյտներով, ցրում ձիւնը թիակներից, ձիւնափոշի բարձրացնում ու ծեծում բանուորների ձեռներին, երեսներին։ Ճգնում էր խանգարել նրանց, հեռացնել դաշտից. կամենում էր մենակ մնալ, մենակ պարել ու իշխել ամայութեան մէջ։

Բայց բանուորները սովոր էին ամեն կռուի։ Քամուն էլ դժուար չէր յաղթել։ Աւելի եռանդով էին շարժում թիակները, ձեռք ձեռքի խփում, ոտները գետնին տրորում և արիւնն այդպիսով երակների մէջ խաղացնում։ Կամ երբեմն թեթև խարոյկ

էին սարքում, մեղմացնում տների մռմռոցը, մատների կապտութիւնը, կաշու կոշտութիւնը և քիչ տաքացած ու թարմացած՝ կրկին գործի կպչում անմար եռանդով։

Կարիքն ու աշխատանքը յաղթում էին ամեն ինչի։

ՍՏ. ՕՀԱՆԵԱՆ

---

* * *

Եթէ քեզ էլ է կոյր բախտը ճնշում,
Եթէ տանջվում ես օր-գիշեր մենակ,
Եւ ’թէ հանգել է քո սրտի խորքում
Սիրաբուղխ յուսոյ պայծառ արեգակ,
Եւ դառն վշտերի շղթայով կապուած
Թէ անիծում ես աշխարհ, մարդկութիւն...
Տո՛ւր ինձ քո ձեռքը, ես էլ եմ տանջուած,
Ես էլ եմ քեզ պէս բախտից գանգատվում...
Տո՛ւր ինձ քո ձեռքը... սլանանք, ընկե՛ր,
Արգելքների դէմ այս մռայլ կեանքի,
Գրո՛հ տանք հոսանքին... թող սպառեն ուժեր...
Գէթ չընկճէ խաչը վե՛հ նպատակի...

ԼԵՒՈՆ ԳՐԻԳՈՐԵԱՆՑ

Ս.-Պետերբուրգ.

---

# ԿԱՅԾԵՐԸ

*(Կորոլենկոյից)*

*Մի ցուրտ աշնանային գիշեր էր, երբ ես նաւում էի Սիբիրի մի պղտոր գետի վրայ։ Առաջ սահելով, յանկարծ մեր առաջ ձգուած մռայլ լեռների յետևից առկայծեցին լոյսի շողեր։*

*Փայլեցին նրանք ուժգին ու պարզ, փայլեցին մեր դիմաց։*

*—Է՛, փառք Աստուծոյ,—բացագանչեցի ես.—մօտ է արդէն իջևանը։*

*Նաւավարը յետ նայեց և դարձեալ դժկամութեամբ յենուեց իր թիու վրայ։*

*—Դեռ շատ հեռու է...*

*Ես չհաւատացի։ Լոյսի ճաճանչները շարունակում էին փայլել անորոշ խաւարի միջից։ Բայց նա ճշմարիտ էր ասում. լոյսը դեռ շա՜տ հեռու էր։*

*Յաղթել խաւարին, փայլատակել, յուսադրել և ցնծութիւն պատճառել իրանց մօտիկութեամբ՝ դա գիշերային կայծերի յատկութիւնն է։ Թւում է թէ՝ ևս թիու մի քանի շարժում, և ճանապարհը անցած կը լինենք, հասած, լոյսին մօտեցած, բայց... նա դեռ շա՜տ հեռու է...*

*Եւ այդպէս երկա՜ր նաւում էինք մռայլ, թանաքի պէս սև գետի վրայ։ Բարանձաւներն ու ժայռերը մերձենում և կրկին հեռանում էին, մեր յետև մնում, անյայտանում անսահմանութեան մէջ, իսկ լոյսը դեռ կանգնած էր մեր դիմաց մօտիկ, բայց հեռու, շա՜տ հեռու տարածութեան վրայ, շողշողալով և գայթակղեցնելով... Նա և շա՜տ մօտ էր մեզ, և շա՜տ հեռու...*

*Յաճախ ես յիշում եմ ապառաժոտ լեռներով այդ պղտոր և մռայլ գետը և այդ պայծառ լոյսը։*

*Շատ կայծեր իրանց մօտիկութեամբ ինձ չե՞ն գայթակղեցրել, յուսադրել. բայց կեանքը սահում է նոյն այդ մռայլ հոսանքում, իսկ կայծերը դեռ շա՜տ են հեռու...*

*Եւ ստիպուած ես դարձեալ թիերի վրայ յենուել, նորից և նորից թիավարել...*

*Բայց և այնպէս... բայց և այնպէս մեր առաջ կայ լոյս...*

Ս. Տ.-ԱԲՐ.

# ԲԱԶԷՆ

## (Մակսիմ Գորկիյից)

### I

Բարձր լերան վրայ սողաց օձը և գալարուելով պառկեց խոնաւ կիրճում, նայելով ծովին։

Բարձր երկնքում փայլում էր արեգակը, լեռները տապից հեւում էին և ցածում ալիքները քարերին էին խփվում…

Եւ կիրճով, խաւարի ու շիթերի մէջ, ծովին ընդառաջ էր շտապում ջրվէժը, քարերի վրայով ցատկելով։

Ամբողջապէս սպիտակ փրփուրի մէջ, ծեր և ուժեղ, նա պատռում էր սարը և կատաղի գոչիւնով՝ ծովի մէջ թափվում։

Յանկարծ՝ այն կիրճը, ուր գալարուել-մնացել էր օձը, երկնքից ընկաւ բազէն՝ փշրուած կրծքով, փետուրները արիւնաթաթախ․․

Կարճ գոչիւնով նա ընկաւ գետին և անոյժ բարկութեամբ, կրծքով քարին էր խփվում…

Օձը վախեցաւ, արագ յետ սողաց, բայց շուտով հասկացաւ, որ թռչունը միայն երկու-երեք րոպէ կեանք ունի։

Նա աւելի մօտ սողաց ջարդուած թռչունին և փշշաց ուղիղ աչքերի մէջ․

—Հը՛, մեռնո՞ւմ ես։

—Այո, մեռնում եմ,—պատասխանեց բազէն, խորը շնչելով։—Ես փառաւոր կեանք ունեցայ… Ես ճանաչում եմ երջանկութիւնը… Ես քաջ կռուեցի… Ես տեսայ երկինքը… Դու երկինքն այնպէս մօտիկից չես տեսնի… Է՜հ, դու, խղճալի։

—Է՜հ, ի՞նչ է երկինքը․ դատարկ տեղ․․․ Ի՞նչպէս սողում ես այնտեղ։ Ինձ համար այստեղ սքանչելի է… տաք ու խոնաւ, —պատասխանեց օձը ազատ թռչունին և իր հոգում ծիծաղեց նրա զառանցանքների վրայ։

Եւ այսպէս էր մտածում․ «Թռիր կամ սողա, վերջը յայտնի է․ բոլորը հողի մէջ պիտի պառկեն, ամեն ինչ փոշի պիտի դառնայ»…

Բայց համարձակ բազէն յանկարծ ցնցուեց, քիչ բարձրացաւ և աչքերը պտտացրեց ողջ կիրճում։

Մոխրագոյն քարի միջով ջուր էր հոսում, և խաւար կիրճից եկած հոտը հեղձուցիչ էր։

Եւ գոչեց բազէն վշտով ու ցաւով, բոլոր ոյժերը ժողովելով.

—Օ՜, եթէ գէթ մի՛ անգամ երկինք բարձրանայի... Թշնամուս կը սեղմէի... իմ կրծքի վէրքին... և նա իմ արիւնով կը խեղդուէր... Օ՜, կռուի երջանկութիւն...

Իսկ օձը մտածում էր. «Նշանակում է՝ երկնքում ապրելը իսկապէս դուրալի է, եթէ նա այդպէս հառաչում է...»։

Եւ նա առաջարկեց ազատ թռչունին.

—Դու առաջացիր կիրճի եզերքին և ցած թռիր։ Գուցէ թևերդ առաջ կը տանեն քեզ և դու քո բանաստեղծական արձակութեան մէջ մի քիչ էլ կապրես։

Բազէն ցնցուեց և թոյլ ճչալով՝ լորձունքոտ քարերի վրայով կիրճի բերանին մօտեցաւ։ Եւ մօտեցաւ նա, ուղղեց թևերը, ողջ կրծքով շնչեց, փայլեցրեց աչքերը և... ցած նետուեց։

Եւ ինքը, որպէս քար, ժայռերի վրայով սահելով՝ արագ վայր ընկաւ, ջարդելով թևերը, կորցնելով փետուրները...

Ջրվէժի ալիքը ընդգրկեց նրան, լուաց արիւնը և փրփուր հագցնելով՝ տարաւ դէպի ծովը։

Իսկ ծովի ալիքները տխուր գոռոցով քարերին էին խփվում։ Եւ թռչունի դիակը ծովի տարածութեան մէջ չէր երևում։

II

Կիրճում պառկած, օձը երկար մտածում էր թռչունի մահուան վրայ, դէպի երկինք թռչելու տենչի մասին։

Եւ ահա նա նայեց այն հեռաւոր տարածութեանը, որ յաւիտենապէս փայփայում է երջանկութեան ձգտումը։

—Իսկ ի՞նչ տեսաւ նա՝ մեռած բազէն՝ այս անյատակ ու անսահման անապատում։ Ինչու՞ այդպիսիները, ինչպէս նա, մեռնելով՝ խռովում են իրանց հոգին՝ դէպի երկինք թռչելու սիրով։ Ի՞նչն է նրանց այնտեղ պարզ։ Ես այդ ամենը կարող եմ գիտենալ, եթէ երկինք թռչեմ մի քիչ ժամանակ։

Ասաց և կատարեց։ Գալարուեց օղակ կազմելով և ցատկեց օդի մէջ ու փայլեց արեգակի վրայ, որպէս նեղ երիզ։

Սողալու համար ծնուածը՝ թռչել չէ կարող... Մոռացած

այդ մասին՝ ընկաւ նա քարերի վրայ, բայց չսպանուեց, այլ ծիծաղեց...

—Ահա թէ ինչումն է երկինք թռչելու գեղեցկութիւնը։ Դա վայր ընկնելու մէջն է... Ծաղրելի՜ թռչուններ։ Երկիրը չճանաչած, նրա վրայ տառապելով, նրանք ձգտում են բարձր երկինք և տաք անապատում կեանք են փնտռում։ Այնտեղ միայն դատարկ է։ Այնտեղ շատ լոյս կայ, բայց չկայ ոչ կերակուր, ոչ էլ կենդանի մարմնին յենարան։ Ինչի՞ է պէտք հպարտութիւնը. ինչի՞՝ կշտամբանքը։ Նրա՞ համար, որպէսզի նրանցով ծածկեն իրանց ցանկութիւնների անմտութիւնը, որպէսզի նրա յետևում թագցնեն իրանց՝ գործի համար անպէտք կեանքը։ Ծաղրելի թռչուննե՜ր... Բայց այժմ էլ չեն կարող խաբել ինձ նրանց խօսքերը։ Ես ինքս ամեն ինչ գիտեմ։ Ես երկինքը տեսայ... Թռայ այնտեղ, չափեցի նրան, իմացայ ընկնելը, բայց չջարդուեցի. միայն սկսեցի ինձ աւելի հաւատալ։ Թող նրանք, որոնք երկիրը սիրել չեն կարող, ապրեն խաբէութեամբ։ Ես գիտեմ ճշմարտութիւնը։ Եւ նրանց կոչերին չեմ հաւատում։ Երկրի ծնունդ եմ՝ երկրով էլ կապրեմ։

Եւ նա ոլորուեց քարին, կծիկ դառնալով և հպարտանալով իրանով։

Փայլեց ծովը, ամբողջապէս վառ լոյսի մէջ, և ահարկու ալիքները ափ էին զարկվում։

Եւ նրանց առիւծային գոչիւնի մէջ թնդում էր մի երգ՝ հպարտ թռչունի համար. Ժայռերը դողում էին նրանց հարուածից, դողում էր երկինքը ահռելի երգից։

«Քաջերի խենթութեանը մենք փառք ենք երգում.

«Քաջութեան ցնորքը՝ ահա կեանքի իմաստը։

«Օ՜, համարձակ բազէ, թշնամիներիդ հետ ունեցած կռւում արիւնաքամ եղար... Բայց կը գայ ժամանակ, և քո տաք արեան կաթիլները, որպէս կայծեր, կը բռնկուեն կեանքի խաւարում և շատ համարձակ սրտեր կայրեն ազատութեան, լոյսի խենթ պապակով։

«Թէև դու մեռար... բայց հոգով ազատների և ուժեղների երգում դու կենդանի օրինակ, ազատութեան, լոյսի հպարտ կոչ կը լինես։

«Քաջերի խենթութեան երգն ենք մենք երգում»։

ԱՐՇԱԼՈՅՍ ՏԷՐ-ՅՈՎՆԱՆԵԱՆ

# ԿԱՐԱ-ՕՂԼՈՒ *)

(Հայ ասպատակի մը կեանքէն)

---

**ԳԻՐՔ Բ.**

## VI

### Միս Թրեւոր կը յայտնուի

*Մեծ էր իրարանցումը տան մէջ, երբ Ջէնէլա ու միս Ուիր դուրս կը հանէին բոլոր փառքերը Բինգըլտընի պնակներուն ու յախճապակիներուն՝ իրենց հնացած դարաններէն, ուր մնացած էին երկար ատեն։ «Միս Թրէւոր այդպէս կուզէ,—կը յայտարարէր միս Ուիր հրամայական շեշտով մը։—Այնպէս չէ՞, Մարթա Բրէգըլ»։ Ասոր վրայ Մարթա Բրէգըլ կը քեքեէր՝ իբրեւ հաւանութիւն։*

*Քանի օրը կը յառաջանար, կարծես բան մը կը ճնշէր Մարթա Բրէգըլի մտքին վրայ։ Անհանգիստ կերպով կերթեւեկէր սովորականէն աւելի փղային ձեւով մը, գրեթէ մոռցած իր խոհանոցային հոգերը, որոնցմով կը պարծէր։ Երբ Թօմփսըն երեւցաւ վարդերու փնջով մը Ջէնէլայի համար եւ կուզէր անուշ խօսակցութեան բռնուիլ Մարթայի հետ, սա մերժեց անխղճօրէն։*

*—Երբ մարդիկ կուգան եւ կերակուր պատրաստած պահուս դիս կարգիլեն, ատի անհանդուրժելի է ինծի,—ըսաւ զօրաւոր շեշտումով մը։—Երբ մարդիկ կուզեն ժամը եօթ եւ կէսին նման արտառոց ժամուն ճաշել, որ մտածելու էին ընթրիքի վրայ, չեմ կրնար տանիլ ուրիշի մը ներկայութիւնը խոհանոցիս մէջ։*

*Թօմփսըն վերադարձաւ տիրոջը եւ յայտնեց, թէ տունը տակն ու վրայ է եղած եւ ամենէ խոհեմ մարդուն համար իսկ վտանգալի է իր երեսը ցուցնել հոն։*

---

*) «Արօր» 1910 թ. № № 6—7, 8—9—10, 11, 12 եւ 1911 թ. № № 1, 2—3.

Քանի երեկոն կը մօտենար, Ֆէնէլա չէր կրնար զսպել վախի զգացումը։ Ի՞նչ պիտի պատահէր։ Միս Թրէսօք շատ զայրացած պիտի ըլլա՜ր։ Իր այս երկիւղին մէջ, Ֆէնէլա կը մխիթարուէր այն մտածումով թէ՝ հիմա գոնէ մէկը ունէր ապաւինելու, մէկը՝ որ չէր վախնար միս Թրէսօքէ և կօգնէր իրեն գալիք ցաւալի տեսարանին մէջ։

Խոշոր զանգակին հնչումը ճաշի համար՝ իմացուց Ֆէնէլայի, թէ իջնելու ժամանակ էր։ Խեղճ աղջիկը վախցած էր նոյն իսկ երթալ ու միս Թրէսօքի ժամանումը հարցնել։

Վերջնական յարդարում մը ըրաւ սև հանդերձին վրայ և պարանոցի դեղին վարդերը ուղղեց։ Իր սիրուն այտերը կասկածանքով կարմրած էին։ Միս Թրէսօք թերևս ընաւ չհասնէր։ Թերևս... «Ինչպիսի՜ երկչոտ մըն եմ»—ըսաւ ինքնին յուսահատօրէն և մեծ սանդուղներէն վար իջնելով՝ դահլիճը ուղղուեցաւ, որու պատերը ծածկուած էին անցեալ օրերու մեռեալ ու անհետաքրքրական Թրէսօքներով։

Երբ մտաւ դահլիճ, Քոլըն Քին իրեն կը սպասէր վառարանին մօտ։

—Ո՜հ, պր. Քին, խիստ կը վախնամ կոր։ Կը կարծէ՞ք թէ միս Թրէսօք վիթխարի մէկը ըլլայ։

Քոլըն Քին ժպտեցաւ այնպիսի եղանակով մը՝ որպէս թէ երկիւղ չունէր ոևէ քանակութեամբ միս Թրէսօքներէ։

—Օ՜հ, ոչ,—ըսաւ վստահեցուցիչ կերպով։—Միս Ուիր չէր համարձակեր զիս ճաշի կանչել, եթէ վտանգ մը ըլլար։ Այնպէս կը կարծեմ թէ՝ միս Թրէսօք իրեն վերագրուածին կէսին չափ ալ չկայ։

—Եօթը անցած է ու միս Թրէսօք հասած չէ տակաւին։ Դիցուք թէ ընաւ չեկաւ։ Այս անորոշութիւնը կը...

Սակայն Ֆէնէլա չկրցաւ աւարտել իր պարբերութիւնը. Մարթա բանալով դուռը մեծաժխոր, սովորականէն շատ աւելի եռանդունօրէն, յայտարարեց՝ «միս Թրէսօք»։

Երբ Ֆէնէլա վեր նայեցաւ, տեսաւ միս Ուիրը, որ հոյակապ սև հանդերձներով կը յառաջանար, ու մխիթարութեան ճիչ մը արձակեց։

—Ո՜հ, միս Ուիր, ինչո՞ւ այս խաղը խաղացիք ինծի. խիստ անազնիւ էր այդ։

Միս Ուիր շատ քիչ ուշադրութիւն դարձուց Ֆէլէլայի բողոքին. իր ամբողջ ուշը.թիւնը ներքև գտնուած ծրարի մը վրայ կեդրոնացուցած կերևէր։

—Պզտիկ տխմար մըն ես, Ֆէնէլա,—ըսաւ կեղծ լրջու-

թեամբ մը—մինչև հիմա տասն անգամ գտած ըլլալու էիր զիս։

—Գտած ըլլալու էի ձե՛զ։ Ի...նչ ըսել կուզէք։

—Ըսել կուզեմ որ... Ա՜հ, ի՛նչպէս էք, պր. Քին... Ըսել կուզեմ որ, Ֆէնէլա, եթէ քու անձնական գործերովդ չափազանց զբաղած չըլլայիր, պիտի տեսնէիր, թէ միս Թրէսօքը երևակայածիդ չափ ալ հեռու չէր քնէ։ Վստահ եմ, որ Մարթան զիս տասնեակ անգամ մը մատնեց։

Սակայն զգացումներու վերայորդումը չափէն աւելի էր Ֆէնէլայի համար։ Նետուեցաւ միս Թրէսօքի թևերուն մէջ և հեկեկալ սկսաւ խտերիական կերպով։

Միս Թրէսօք ի զո՛ւր կը ճգնէր մեղմել զայն։

—Պր. Քին, քիչ մը ջուր, շուտ։ Ի՜նչպէս յիմար ըլլալու էի, որ այս խաղը խաղայի... Խեղճ աղջիկը արդէն զինքը մեռցնելու չափ նեղութիւն ունէր այս վերջին քանի մը ամիսներս... Հոդ մի՛ կանգնիր, մարդ. քիչ մը ջուր բեր. կը նուաղի կոր... Ո՜հ, բայց մոռցայ. կոյր ես... Ֆէնէլա՛, վեր նայէ, Ֆէն։ Ես եմ միայն... Տխմար մի՛ ըլլար... Ֆէնէլա՛...

Եւ, անով ընկճուած, միս Թրէսօք զետեղեց աղջիկը բազմոցին վրայ և ուժգնօրէն ցնցեց։

Այս ցնցումը ուշաբերեց Ֆէնէլան։ Նստաւ, հևաց ու լացաւ, թաղելով գլուխը միս Թրէսօքի գոգը։

Միս Թրէսօք խղճմտալ սկսաւ։

—Չե՞ք տեսներ թէ կէս մը սպաննեցիք աղջիկը,—ըսաւ Քոլըն Քին։—Երկրորդ անգամ, երբ այսպիսի փորձեր կընէք, աւելի մարդասէր գտնուեցէք, միս Թրէսօք։

Միս Թրէսօք ձեռքերը գալարեց։

—Արժանի՛ եմ,—ողբաց։—Չար, խստասիրտ, աններող ու անքրիստոնեայ ծերուկ մըն էի, և վարձքս գտայ։ Լա՛ւ ես, Ֆէն։

Ֆէնէլա բազմեցաւ, աչքերը չորցնելով։

—Մտադիր չէի այդպիսի տ...խմար մը ըլլալ... Վստա՞հ ես բոլորովին՝ թէ սխալմունք չկայ։

—Բոլորովի՛ն, Ֆէնէլա։ Սակայն եկուր ճաշի ու ապա ամէն ինչ կը բացատրեմ։ Փոքրիկ ընծայ մը ունիմ քեզի համար՝ որ կարծեմ թէ պիտի սիրես։

Մարթա սեղանին մօտ կը սպասէր՝ լայն քմծիծաղ մը իր հանդարտաբարոյ դէմքին վրայ, և առ երևոյթս հպարտ կը զգար ինքզինքը՝ խնդիրը վարպետօրէն կարգադրելուն համար։ Բայց անհասկնալի էր իրեն միս Թրէսօքի ու Ֆէնէլայի ախորժակի պակասութիւնը։ Գալով վերջինոյն, նստած էր սեղանին ծայրը՝

որպէս թէ երազի մը մէջ. պատառաքաղը մերթ օդին մէջ կը մնար, և ապա կրկին կը զետեղէր պնակին վրայ։ Չէր կրնար ուտել։ Գրեթէ անսրտութիւն կը թուէր իրեն Քոլսըն Քինի կողմէ, երբ սա այնքան լաւ ախորժակ կը ցուցնէր՝ հակառակ նախորդ օրուայ պատահարին։

Սակայն ամեն ինչ պէտք է վախճանի մը հասնի, նոյն իսկ անգլիական ճաշ մը։ Ու երբ դադրեցան ուտելէ և արբենալէ, միս Թրէսօք ոտքի ելաւ։

—Առանձի՞ն մնալ կուզէք թէ՞ կը բաղձաք մեզ ընկերակցիլ, պր. Քին,—հարցուց։—Եթէ կուզէք գալ, Մարթան կը բերէ ձեզ։

—Ո՛չ, շնորհակալ եմ։ Լաւագոյն չը՞լլար որ միս Ցրօմը իր թշուառ կացութենէն փրկենք կարելի եղածին չափ շուտով։

Ցէնէլա, առաջին անգամն ըլլալով, ժպտեցաւ։

—Այդ այնպէս կը ցուցնէ՝ որպէս թէ պիտի գլխատուիմ։ Պատժի մը արժանի եմ յիմարութեանս համար։

—Եկո՛ւր,—ըսաւ միս Թրէսօք խստօրէն։—Ժամանակ է որ անցեալը պարզենք։ Մարթա, թէյ բեր մեզի կէս ժամէն։

Միւսները դահլիճ առաջնորդեց, որովհետև միս Թրէսօք սովոր էր ինքզինքը տան ամենէ կարևոր անձնաւորութիւնը համարել։

—Ա՛րդ,—ըսաւ,—կարգը իմս է դատուելու։ Ի՞նչ ունիս ըսելիք, Ցէնէլա։

Ցէնէլա վեր նայեցաւ։

—Եթէ չէք նեղուիր, միս Թրէսօք, աւելի կը նախընտրէի ոևէ բացատրութեանց մէջ չմտնել։ Կարծեմ թէ փոքր ինչ խիստ գտնուեցաք գրքիս։ Շատ կը սիրէի զայն, բայց և այնպէս իրաւունք ունէիք ձեր ուզածին պէս վարուիլ անոր հետ, և ձեզ ոևէ գրքէս աւելի կը սիրեմ։

—Անոր քիչ մը վերջ կուգանք,—պատասխանեց միս Թրէսօք փոքր ինչ դաժանութեամբ. ապա համբուրեց Ցէնէլան, որպէս թէ վերջնոյն նկատողութիւնը տհաճութիւն մը պատճառած չէր իրեն։—Այժմ սկիզբէն սկսինք։

—Անշուշտ,—վրայ բերաւ Քոլսըն Քին։—Ատի սովորական եղանակն է, միս Թրէսօք. մարդոց հետ, ըսել կուզեմ։

Միս Թրէսօք անտեսեց այս չնչին ընդմիջումը։

—Կուզեմ հնար եղածին չափ կարճառօտել։ Հայրդ, Ցէնէլա, վարուեցաւ հետս շատ դէշ կերպով։ Սիրաբանեց ինծի, տիրացաւ սրտիս և ապա խնդաց ու հեռացաւ։ Իմ սէրս ատելութեան փոխուեցաւ, դարձայ կծու, թշուառական կին մը ու

վճռեցի ինքնին, փոքր ինչ մելօդրամատիկ կերպով, վրէժ լուծել։ Թէպէտև գիտէր, թէ ես կատէի զինքը, ան կը շարունակէր հեգնել։ Կըսէր թէ՝ աւելի լաւ էր սիրած ու կորսնցուցած ըլլալ, քան թէ սիրած չըլլալ երբէք, և թէ՝ ես երախտապարտ լինելու էի իրեն՝ փորձառութիւնս ընդլայնելուն համար։ Ապա ճամբէս հեռու կեցաւ։ Որ շատ իմաստուն գործ մըն էր, խիստ իմաստուն, ապա թէ փորձառութիւնս առաւել ևս կընդլայնէի իր հաշւոյն։ Ես չեմ կարծեր թէ՝ յուսախաբութեան ու բարկութեան առաջին տարիներուս՝ ինձմէ հեռու պահուելէն աւելի իմաստուն գործ մը կատարած ըլլայ ան։ Սակայն, մնացի ես այդ ատելութիւնը տարիներու ընթացքին՝ մինչև հոգւոյս անցաւ ան։ Օր մը հայելին նայեցայ ու, զարմանքով, ինքզինքս ծեր կին մը գտայ։

Ֆէնէլա անհամաձայնութեան շարժում մը գործեց։

—Այս ատելութիւնը, որ չթողուց զիս երբէք, ծերացուցած էր ինծի։ Բնաւ մի՛ ատեր մէկը, Ֆէնէլա, ցկեանս ատելութիւնով մը։ Ատի իր բնական պատիժն է ինքնին, և մարդուս էութիւնը կը ծծէ ու կը թթուեցնէ։ Մարդու հոգին երկաթէ կապանքներով կը կապուի։ Հայրդ մեռաւ. բայց իմ ատելութիւնս գոհունակութիւն գտած չէր տակաւին։ Նոյն մահուան մէջ իսկ արհամարհած էր զիս ու խոյս տուած ինձմէ։ Ան գիտէր, թէ իր զաւակը ատելի էր ինծի, հետևաբար, որպէս վերջին գերագոյն կատակ մը, կամ յաղթանակ մը՝ իր ենթադրութեամբ, յանձնարարեց քեզ իմ խնամքիս։ Գրեցի քեզի այն կնոջ անվայել ծանօթ նամակը, որպէս զի քեզի հանդէպ ունեցած զգացմանս նկատմամբ սխալմունք մը չլինի։ Ջուզեցի որ ցնորքներով գաս հոս։ Կը բաղձայի փորձել քեզ ամեն կերպով. և եթէ տոկացիր փորձութեան, խաղաղութիւն կնքել հօրդ ու երկնքի հետ և այնուհետև յաւէտ դուրս վանել սրտէս սև ատելութիւնը։ Կերպով մը՝ խիստ ծերացած կը զգամ այս գիշեր, որպէս թէ վախճանս մօտենալու վրայ լինէր։ Հազիւ թէ տրամադրութիւն ունիմ այս բոլորը պատմելու։ Կարծես սև ստուեր մը կախուած է գլխուս վերև։

Կանգ առաւ։

—Մի՛ պատմեր այլ ևս։ Խնդրեմ, մի պատմեր,—պաղատեցաւ Ֆէնէլա։—Դու ինձմէ շատ աւելի, շա՜տ աւելի տառապած ես։ Եթէ քեզ երջանկացնող բան մը ըրի, մեծապէս գոհ կը զգամ ինքզինքս։

—Ըրիր, զաւակս, անշո՛ւշտ։ Եւ այժմ, դեռ ևս շատ ըսելիք չմնաց,—շարունակեց միս Թրէսօք։—Յանկարծ այն միտքը

վրաս եկաւ, որ քեզ հաւատացնեմ, թէ ես միս Թրէսօքը չեմ։ Խորհեցայ որ, եթէ գիտնայիր, կրնայիր խորամանկութիւններ ձեռք առնել ու զիս անհաճոյ կացութեան մը դատապարտել։ Երբ գտայ քեզ Մարթայի թեւերուն մէջ նուաղուն, սիրելիս, խղճմտանքս արթնցաւ։ Օգնեցի քեզի անկողին դնել ու ամբողջ գիշերը հսկեցի վրադ։ Դէմքդ քաղցր էր, սիրասուն և ազնիւ։ Դաւաճանութիւն ու կեղծիք տեղ չունէին հոն։ Ըսի ինքնիս թէ՝ պիտի ջանամ գործովդ վաստկիլ։

Ցէնէլա ոտքի ցատկեց, սակայն միս Թրէսօք հոն կեցուց զինքը։

—Այնուհետև որոշեցի ամենէ ժանրախոյզ կերպով փորձել քեզի։ Նուիրուած էիր գրքիդ։ Ունեցած միակ հարստութիւնդ էր։ Խորհեցայ, որ եթէ տաս այդ, եթէ ձեռքէդ առնեմ զայն, պիտի գոհանամ։ Առի, և...

Ցէնէլա փոքր ճիչ մը արձակեց։

—Վառեցի՞ր զայն... Ո՜հ...հ...։—Ապա կանգ առաւ։—Հոգ չէ։ Այլ ևս չեմ խօսիր այդ մասին։

—Բայց այդ ծրարը։—Հաճելի ժպիտ մը կար միս Թրէսօքի փոքր ինչ դաժան դէմքին վրայ։—Բաց այդ ծրարը, Ցէնէլա, և ըսէ, թէ ներած ես ինծի։

Ցէնէլա քակեց ծրարը դողդոջուն մատներով։ Այդ գործողութեան միջոցին կանգունով տպագրուած թուղթեր դուրս կը թափուէին։

—Ի...ի...նչ է այս։ Ո՜հ, միս Թրէսօք, այս ի՞նչ ես ըրած։ Ի՞նչ ես ըրած։ Ան...ան...կարելի է...։

—Կարծեմ «փորձեր» կը կոչուին ատոնք, — ըսաւ միս Թրէսօք։—Քիչ մը ևս յիմարաբանութիւն կը ձափռտես արդէն հոն գտնուած յիմարաբանութեան վրայ, և ապա կը կտրուին, էջերու կը վերածուին և գիրք կը կազմուին, որպէս զի սէնթիմէնթալ տխմարներ կարդան։ Ուրախ ես այժմ։

Ցէնէլա՝ հրճուանքէն՝ ամբողջ մարմնով կը դողար։ «Փորձե՜ր։ Փորձե՜ր։ Փորձե՜ր»։ Տպագրիչի մելանին բոյրը վարդերէ անուշ կուգար ռունգերուն։ Ահա իր երազները, որոնք անկորնչելի ձեւի մը էին փոխուած։ Գրկեց թեւերուն մէջ ու սրտին սեղմեց։

—Ա՛րդ,—ըսաւ միս Թրէսօք։—Ներուա՞ծ եմ հիմա։ Ամբարիշտ, տխմար ծերուկ մը եղած եմ, ու կը ցաւիմ այդ մասին։ Գիրքը կրնայ լոյս տեսնել քանի մը ամիսէն, կամ ոչ, ինչպէս որ կուզես։ Մի...

*Բայց Ճէնէլա վեր ցատկեց ու միս Թրէսօքը իր թեւերուն մէջ պարփակեց։*

*—Իսկ իմ մասիս,—հարցուց Քոլըն Քին, զուարճալի արտայայտութիւնով մը։*

*Միս Թրէսօք ժպտեցաւ։*

*—Դու և Ճէնէլա միակն էք որ վիրաւորած եմ երբէք, հետևաբար կը խնդրեմ որ երկուքդ ալ այս իրիկուն ճաշի գաք և իմ քաւութեանս ականատես ըլլաք։ Խօզերս այլ ևս չպիտի խանգարեն ծնեբեկներդ։ Երկուքն ալ համայնական կըլլան՝ խօզեր ու ծնեբեկ՝ եթէ այդպէս նախընտրես։ Իմ հոգս չէ։*

*Ճէնէլա անմիջապէս բանաստեղծին մօտն էր։*

*—Մի՛ կարծեր, թէ քեզ կը մոռնամ,—ըսաւ օրիորդը։ – Միայն թէ խիստ սիրալիր անակնկալ մըն էր։ Մի՛ սարսափիր, բայց… բայց* դուն ես գրքին հերոսը…

*Խնդաց, սակայն միանգամայն զգացուեցաւ։*

*—Ուրեմն վստահ եմ ինքզինքս չճանչնալու,—պատասխանեց։—Ատի վարձատրութիւն մըն է երեկուան կորստիս փոխարէն։ Եւ գիրքը սովորական օրթօդոքս եղանակով կը վերջանայ։*

*—Այո,—պատասխանեց Ճէնէլա անմիջօրէն։*

*Քոլըն Քին մէկ կողմ դարձաւ։*

*Այդ երազի մանուկները, իր մխիթարիչներն ու նեցուկները փորձութեան ժամուն, իրեն վերադարձած էին կրկին։ Անոնք չէին նմաներ այն հեղինակներու ստեղծագործութեանց, որոնք աշխարհին կը նուիրեն իրենց ուղեղին ծնունդը, որոնք անոնց անհանդարտ դեգերումները կը դիտեն օրուան նուազ լոյսին մէջ և գիտեն, թէ այլ ևս չպիտի վերադառնան անոնք, և թէ, երբ այդ ուրուականներուն մարող ու տարտամ ձայները լսուին կեանքի անապատէն, արդէն նորեր գրուած են անոնց տեղը իրենց սրտերուն մէջ ու երազի մանուկները միայնակ են և ի զո՛ւր զիրենք մերժող աշխարհէ մը ապաստան կը հայցեն, որովհետև անոնց պէտք չկայ այլ ևս։ Գիտակից այս ճըշմարտութեան, Ճէնէլա, երբ կը մեկուսանար սենեակ՝ «փորձերու» ծրարը թևին տակ, զգաց, որ չէր կրնար բաժնուիլ իր գրքէն և աշխարհին յանձնել զայն։ Օր մը, թերևս, Երասդոս ուզէր տեսնել զայն, և ապա…*

*Միջնագիշերէն դեռ շատ ուշ, իր փոքրիկ սենեակը նստած կը խօկար ան, չափազանց գրգռուած ու երջանիկ՝ ննջելու։*

*Յանկարծ մեղմ ոտնաձայն մը լսեց դրսէն։*

*—Եթէ միս Թրէսօքն է,—խորհեցաւ ինքնին,—պէտք է*

*երթամ դիմաւորելու։ Թերևս ուրիշ ըսելիք մը ունի ինծի, բան մը՝ որ կրնայ մոռցած ըլլալ։*

*Բացաւ դուռը և դէմ առ դէմ եկաւ Ջօզէֆ Բլէքի հետ։*

*—Ըսի թէ շուտով պիտի այցելեմ ձեզ,—ըսաւ հեգնական ժպիտով մը։—Ձեր կարծածէն աւելի մօտ էի ձեզ այս բոլոր ժամանակը, սակայն հիմա միայն կրցայ ներս մտնել։ Հօրդ աղամանդներուն համար եկած եմ։ Յանձնէ զանոնք, ապա թէ ոչ....*

*Մինչ փոքրիկ դաշոյնի մը կեռ շեղբը կը ծօճէր աղջկան աչաց առջև, միս Թրէսօք երկուքին միջև սողաց, բռնեց թևը, ու դանակը ամբողջ կուրծքին մէջ խրուեցաւ։ «Ֆէն.. նե...րէ...»։ Ու գետին գլորեցաւ, իսկ Ֆէնէլա, երկրորդ անգամ ըլլալով կեանքին մէջ, նուաղեցաւ։*

*Բլէք Ֆէնէլայի խուցը փութաց, աճապարանօք աղամանդները փնտռելու առանց արդիւնքի։ Հայհոյանքով մը դուրս եկաւ։*

*—Ենթադրածէս աւելի ճարպիկ է եղեր, ու հիմա կրկին պէտք է այդ անիծեալ Հայաստանը վերադառնամ մինչև կեանքիս վախճանը։ Ամէն ինչ վերջացած է այժմ մեր մէջ, ու Օքսֆորդ և իր դաստիարակութիւնը, ինչպէս նաև ես ինքս, պէտք է սատանային երթանք։—Նայուածքը անզգայ աղջկան վրայ ինկաւ։—Ա՜հ... հուզէի... Ոստիկանութիւնը քանի մը ժամէն ետևէս պիտի ըլլայ։ Ո՛չ, գոհարները իր վրայ չեն...*

*Լաւ մը խուզարկելէ վերջ՝ բարձրացուց Ֆէնէլան ու տարաւ անկողին, իր հաստ կարմիր շրթները վայրագօրէն կրկին ու կրկին անոր սպիտակ ծոծրակին ընքուշ ծալքերուն մէջ թաղելով։ Հեռացաւ ծանր հառաչով մը։*

*—Ա՜յդ էր պակաս դատապարտութիւնս կատարեալ ընելու։ Որքա՜ն գեղեցիկ է...*

*Սակայն հեռուն բացուող դրան մը աղմուկը ազդարարեց իրեն թէ՝ ժամանակ էր փախչելու։ Այս աճապարանքին մէջ ետին թողուց իր Դամասկոսեան դաշոյնը, վրան արձանագրուած՝ «Կարա-Օղլու»։ Երբ Ֆէնէլա ինքնագիտակցութեան եկաւ, գետինը գտաւ զայն, ու յիշեց թէ նախապէս ուր տեսած էր քաղաքակրթութեան այդ պզտիկ զաւակը, որ կանուանէր ինքզինքը Ջօզէֆ Բլէք։*

*Բայց միս Թրէսօք մեռած էր։ Այնպէս ենթադրուեցաւ թէ, նա ևս, անկարող լինելով ննջել, կուզար գիշերային խօսակցութիւն մը ունենալ Ֆէնէլայի հետ։ Սիրտը, արձակուած տենչութեան և չարչարանքի բեռէն, աղջկան սէրը ապահովե-*

լու բաղձանքով կը տոչորէր։ Եւ Ֆէնէլա, երբ, յուղարկաւորութեան յաջորդ օրը, այս հին տան պաղ միայնութեան մէջ նըստած կը մտածէր, տխրացած՝ երազածէն աւելի հսկայ հարստութեան մը, տողեց զինքը սիրող կնոջ սպանիչը որոնել և գտնել։

—Ե՛ս ալ պիտի գամ,--յայտարարեց Քոլըն Քին, երբ օրիորդը մտադրութիւնը պարզեց անոր։—Կամ ես կը սպաննեմ զինքը, կամ նա զիս։ Ի՞նչ կըսես։

—Անմիջապէս Պոլիս մեկնիլ,—պատասխանեց Ֆէլէլա,—և յայտնել Երասդոսի։ Կարա-Օղլու անկասկած պէտք է իր երկիրը վերադարձած ըլլայ։ Չի համարձակիր հոս մնալ։

Քոլըն Քին գլուխը շեղեց։

—Այո՛,—պատասխանեց ճիգով մը։—Երասդոսին կերթանք։ Հայը ապահովաբար իր երկիրը վերադարձած կըլլայ։ Ու ան արդէն շաբաթ մը առաջ է մենէ։

—Երկուշաբթի կը թողունք հոս, — ըսաւ Ֆէնէլա։—Մեծ ազնուութիւն մըն է քու կողմէդ ինծի հետ գալ։

—Երբէք,—պատասխանեց Քին։—Կուզեմ երկար ճանապարհորդութիւն մը ընել ու Կարա-Օղլուին հանդիպիլ։ Եթէ հանդիպիմ...

Յանկարծ կանգ առաւ և ուղղուեցաւ տուն, հարկաւոր նախապատրաստութիւնները տեսնելու։

Ջ. Բ. ԲԸՐՋԻՆ

Թարգմ. անգլ. Մինաս Ցոլակ

# ԵՐԱՆԻ ՔԵԶ ՈՒ ՔՈ ՀԱՄԲԵՐՈՒԹԵԱՆԸ

(Արձակ բանաստեղծութիւն)

---

Նուէր օր. Ր. Մ. Խ.-ին

Տեսե՞լ ես արդեօք պարզ աղբերակ, քրքջացող առու, որը ճեղքուած լերան ծոցից դուրս ցատկելով, խայտալով ու ախորժալուր խոխոջումով առաջ է սլանում, վազում հա՛ վազում։

—Ո՛չ։

Ապա ուրեմն՝ ո՞րպէս կարող կը լինես գաղափար կազմել իմ յստակ ու պարզ արցունքների մասին։

Մի գուցէ տեսել ես ծով, ալեկոծ, կատաղած ծով, որի իւրաքանչիւր ալիքը գլխապատառ առաջ է վազում և հասնելով ամրակուռ ժայռին՝ ուժգնօրէն զարնվում է նրան և զայրացած ու փրփրած կրկին յետ դառնում՝ աւելի մեծ թափով առաջ խոյանալու համար։

Թերևս ունկնդրել ես երբևիցէ սանդարամէտի դժոխային ձայներին, որոնք ահարկու են, սարսուռ ու մահ ազդող։

Լսել ես գուցէ Բեհեղզեբուղի թագաւորութեան որդոց՝ սատանաների սիրտ պատառող ծիծաղն ու քրքիջը։

—Ո՛չ։

Ուրեմն չես կարողանալու մեռցնել իմ միջի վերին ներշնչումը, աստուածային հուրը։

Ականջալուր եղե՞լ ես երբևիցէ լուսածագին դայլայլող արտուտիկին։

Եւ կամ մշտալուռ գերեզմանի վրայ, կէս գիշերային անվերծանելի խաւարում լսե՞լ ես արդեօք կորցրած սիրուհու դամբարանին կպած սիրեկանի սրտամորմոք, տխուր, վշտոտ ու թախծալի մելամաղձիկ երգը, նրա ախն ու վիշը, հառաչանքը։

—Ո՛չ։

Հապա ինչպէ՞ս պիտի ըմբռնես իմ երգը, իմ սրտի լարերի մեղեդիանման ձայների թախիծը, նրա անհուն ցաւը։

Տեսած կը լինե՞ս, անշուշտ, համբոյրներով թօրշոմեցրած վարդ և կամ սիրուց տոչորուող կարօտակէզ եար։

—Ո՛չ։

Հոգո՛ւս հատոր, սրտի՛ս սպեղանի, չէ՞ որ այդ ես եմ, քեզ երգողը, քեզ աստուածացնողը, քո գուսանը, քեզնով ապրողը, քեզնով շնչողը։

Ճանաչեցի՞ր ինձ արդեօք։ Ուրեմն ասա. կարդացե՞լ ես իմ բանաստեղծութիւնները, որոնք քեզ են ձօնուած, քո անուան, քո նկարագրի ներշնչմամբ ձուլուած, քեզնով հոգի առած, քեզ նուիրուած։

Լսե՞լ ես իմ փանդուրի, ջութակի հառաչանքը, ողբացող ու կոծող հնչիւնները։

Իմ իւրաքանչիւր բառի միտքը հոգուդ աչքով չափել ու կշռե՞լ ես արդեօք։

Իմ աղօթքները, ձայների ժխորը, իմ արցունքները չափ ու յանգի վերածե՞լ ես երբևիցէ, շարե՞լ ես նրանց զգացմունքի լարերի վրայ, լարեր, որոնք երկնային՝ աստուածային են ու թովիչ։

Ինքդ հիւսե՞լ ես արդեօք յանգեր։

Ներշնչուե՞լ ես մուզաներից, ապրե՞լ ես նրանց հետ։

Ապա ասա՛, խօսի՛ր, դայլայլի՛ր, բա՛ց գեղեցիկ բերանդ, ցոյց տո՛ւր մարգարտանման ատամներդ, ժպիտ արձակի՛ր, որպէսզի այտերիդ վրայ սքանչելի փոսիկներ գոյանան, որոնց համար ես կեանքս կը տամ։

Ժպտա՛, որպէսզի այդ ծովանման ու մութ գիշերին նմանող աչքերիդ թովչութիւնը տեսնեմ, որոնք ինձ կեանք կը տան՝ ոգի կը ներշնչեն։

Ա՜խ, այդ աչքերը, որոնք երբեմն լի են հրով, իսկ որոնց մէջ երբեմն էլ թագաւորում է հարաւային մթին գիշերի անդորրութիւնը և որոնք երբեմն փայլփլում են՝ որպէս աստղեր։

Նրանց շնորհուած է խորհրդաւոր ոյժ. Նրանք փայլում են որպէս փարոս մթին գիշերին։

Նրանց մասին եմ մտածում երկարատև անքուն գիշերներին, հիւանդագին զառանցանքների մէջ և տեսնում եմ նըրանց անտեսանելի աչօք։

Ուրեմն գէթ այժմ պատասխանի՛ր սիրուս, որպէսզի ուրախանամ ու ցնծամ, պար բռնեմ, այրուած սիրտս ամոքեմ, դարդերիս վերջ տամ։

Բայց դու յամառ կերպով լռում ես, ոչինչ չես ասում, չես պատասխանում։

Լուռ ես, որպէս հինաւուրց տապանաքար, ինչպէս Ռաֆայէլեան Մադօննա—Աստուածամայր։

Բայց մինչև ե՞րբ պիտի լռես, մինչև ե՞րբ պիտի թափես իմ հոգին, ե՞րբ պիտի խօսես ու ինձ ուրախացնես։ Ասա՜...

Բայց երանի՜ քեզ ու քո համբերութեանը։

ՅԱՐ. ԳԱՍՊԱՐԵԱՆ

---

* * *

Քո երկինք աչերի աստղե՛րն եմ ես սիրում,
Աստղե՛ր ոսկի՜ ու գոհար,
Սիրո՜ւմ եմ, երբ նըրանք ժըպտո՜ւմ են ու նիրհո՜ւմ,
Ժըպտո՜ւմ են ու նիրհո՜ւմ՝ ինձ համար։

Ես ուզում եմ լինել ընկե՛րը քո կեանքի,
Ընկե՛րը՝ զօրեղ ու ազդու,
Բաժանել լուռ քեզ հետ՝ քո բեռը տանջանքի,
Դու չէ՞ որ հոգի՛ն ես իմ հոգու։

Ս. ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ

Պետերբուրգ.

# ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԻՒՆԸ*)

Լ. Ն. Տօլստոյի

---

## VI

Կեանքի հարցերին պատասխաններ որոնելու մէջ ես միանգամայն նոյն կացութիւնն եմ զգացել, ինչ զգում է անտառում մոլորուած մարդը։

Դուրս է եկել տափարակի վրայ, բարձրացել ծառը և պարզապէս տեսել անսահման տարածութիւններ, բայց տեսել է և այն, որ տուն չկայ այնտեղ և լինել էլ չէ կարող. գնում է խորքը, գնում է խաւարով և տեսնում խաւար, տեսնում, որ այնտեղ էլ տուն չկայ ու չկայ։

Այդպէս մոլորուած շրջում էի ես մարդկային գիտութիւնների անտառում՝ մաթեմատիկական և փորձնական գիտութիւնների լուսամուտների միջից,—որոնք բաց էին անում իմ առջև պարզ հօրիզոններ, բայց այնպիսի հօրիզոններ, որոնց ուղղութեամբ տներ լինել չէին կարող,—նոյն և վերացական գիտութիւնների խաւարի միջից, որոնց միջով ես խորասոյզ էի լինում առաւել խոլ խաւարի մէջ և այն չափով, որ չափով առաջ էի շարժվում, և վերջապէս համոզուեցի, որ ելք չկայ և չէ էլ կարող լինել։

Անձնատուր լինելով գիտութիւնների լուսաւոր մասին, հասկանում էի, որ ես միմիայն իմ հայեացքն եմ հեռացնում իսկական հարցից։ Որքան էլ իմ առաջը բացուող հօրիզոնները գրաւիչ ու պարզ լինէին, որքան էլ գրաւիչ լինէր խորասուզումը այդ գիտութիւնների անվախճանութեան մէջ, ես արդէն հասկանում էի, որ դրանք, այդ գիտութիւնները, առաւել պարզ են այն չափով, որ չափով պակաս կարևոր են նրանք ինձ համար, պակաս պատասխանում իմ հարցին։

Հարկաւ, ես գիտեմ այն ամենը,—ասում էի ես ինձ,—ինչ

---

*) «Արօր» № № 1 և 2—3.

որ գիտութիւնը այնպէս յամառօրէն ցանկանում է իմանալ, բայց իմ կեանքի իմաստի վերաբերեալ հարցին այդ ճանապարհի վրայ չկայ պատասխան։ Վերացական ասպարիզում սակայն ես հասկանում էի, որ չնայելով նրան, կամ հէնց նրա համար, որ գիտութեան նպատակը ուղղուած էր ուղղակի իմ հարցի պատասխանի կողմը, չունի այլ պատասխան, բացի այն, ինչ որ ես ինքս եմ տուել ինձ.— ի՞նչ իմաստ ունի իմ կեանքը։ —Ո՛չ մի։—Կամ՝ ի՞նչ դուրս կը գայ իմ կեանքից։—Ոչինչ։—Կամ՝ ինչո՞ւ գոյութիւն ունի այն ամենը, ինչ որ գոյութիւն ունի, և ինչո՞ւ գոյութիւն ունեմ ես։—Նրա համար, որ գոյութիւն ունի։

Հարցնելով մարդկային գիտութիւնների մի կողմին, ես ստացայ անհամար քանակութեամբ ճշգրիտ պատասխաններ այն հարցերի վերաբերմամբ, որոնց մասին ես չէի հարցրել. աստղերի քիմիական բաղադրութիւնների մասին, Հերակլեան համաստեղութեան մէջ արևի շարժման, մարդու և տեսակների ծագման, անսահման մանր ձևերի, եթերի անկշիռ մասնիկների մասին. սակայն գիտութիւնների այդ ասպարիզի պատասխանը իմ հարցին, թէ ինչո՞ւմն է իմ կեանքի իմաստը, մէկ հատ էր —դու այն ես, ինչ որ դու քո կեանքն ես համարում. դու՝ մասնիկների ժամանակաւոր, պատահական կապակցութիւնն ես։ Այդ մասնիկների փոխադարձ ներգործութիւնը, փոփոխութիւնը արտադրում են քո մէջ այն, ինչ որ դու քո կեանքն ես համարում։ Այդ կապակցութիւնը կը շարունակուի որոշ ժամանակ, ապա այդ մասնիկների փոխադարձ ներգործութիւնը կը վերջանայ, և կը վերջանայ այն, որը դու կեանք ես անուանում, որով կը վերջանան նաև քո բոլոր հարցերը։ Դու մի ինչ-որ բանից պատահաբար կծկած գնդիկ ես։ Գնդիկը նեխվում է։ Այդ նեխումը գնդիկը իր կեանքն է համարում։ Կը փշրուի գնդիկը, կը վերջանան նաև նեխումն ու բոլոր հարցերը։ Այդպէս է պատասխանում գիտութիւնների պարզ կողմը և ուրիշ ոչինչ չէ կարող ասել, եթէ միայն նա խստօրէն հետևում է իր հիմունքներին։

Այդօրինակ պատասխանով ակներև է դառնում այն, որ պատասխանը՝ իսկական հարցերին չէ պատասխանում։ Ինձ համար կարևոր է գիտենալ իմ կեանքի իմաստը, իսկ որ նա անվախճանի մասնիկն է՝ ոչ միայն նրան չէ հաղորդում որևէ իմաստ, այլ ոչնչացնում ամեն հնարաւոր իմաստ։

Միևնոյն անհասկանալի համաձայնութիւնները, որ կայացնում է փորձնական, ճշգրիտ գիտութեան այդ կողմը վերացականութեան հետ, երբ շեշտվում է, թէ կեանքի իմաստը կայա-

նում է զարգացման և այդ զարգացմանը նպատման մէջ,—իրանց անորոշութեան և անճշտութեան շնորհիւ չեն կարող համարուել պատասխաններ։

Գիտութեան միւս կողմը՝ վերացականը, երբ նա խստօրէն կանգնած է իր հիմունքների վրայ, հարցին ուղղակի պատասխանելով ամենուրեք և բոլոր դարերում պատասխանում է և պատասխանել է միևնոյնը. տիեզերքը ինչ-որ մի անվախճան և անհասկանալի բան է։ Մարդկային կեանքը այդ անհասանելի «ամենի» անհասանելի մասնիկն է։ Ես կրկին դուրս եմ գցում վերացական և փորձնական գիտութիւնների այն բոլոր համաձայնութիւնները, որոնք կազմում են կիսագիտութիւնների ամբողջ բալլաստը, աւելորդ բեռը, այսպէս կոչուած իրաւաբանական, քաղաքական, պատմական կիսագիտութիւնների։ Այդ գիտութիւնների մէջ ևս անճիշտ կերպով մտցվում են զարգացման, կատարելագործման գաղափարները այն տարբերութեամբ սակայն, որ այնտեղ՝ ամեն ինչի զարգացումն է, իսկ այստեղ՝ մարդկային կեանքի։ Անճշտութիւնը միատեսակ է. զարգացումը, կատարելագործումը անվախճանի մէջ չէ կարող ունենալ ոչ նպատակ, ոչ ուղղութիւն և այդ տեսակէտից իմ հարցին ևս նա ոչինչ չէ պատասխանում։

Իսկ այնտեղ, որտեղ վերացական գիտութիւնը ճշգրիտ է, այսինքն իսկական փիլիսօփայութեան մէջ—ոչ այն, որին Շօպէնհաուէրը անուանում է պրօֆէսօրական փիլիսօփայութիւն, որի ծառայութիւնը բոլոր գոյութիւն ունեցող երևոյթների բացատրութիւնը ըստ նոր փիլիսօփայական սիւնակների դասաւորման մէջ է և նրանց նոր անուններ հաղորդելու—այնտեղ, որտեղ փիլիսօփան աչքից չէ վրիպեցնում էական հարցը, պատասխանը միշտ միատեսակ է, մի պատասխան՝ որ դրել են Սօկրատը, Շօպէնհաուէրը, Սողոմոնը և Բուդդան։

«Մենք ճշմարտութեանը կը մօտենանք այն չափով միայն, որ չափով կը հեռանանք կեանքից,—ասում է Սօկրատը՝ պատրաստուելով մահուան։—Ի՞նչ բանի ենք ձգտում կեանքի մէջ մենք՝ ճշմարտութիւն սիրողներս։—Ձգտում ենք՝ անջատուելու մարմնից և բոլոր այն չարիքներից, որոնք բղխում են մարմնական կեանքից։ Եթէ այդպէս է, ինչպէս ուրեմն չուրախանանք, երբ մահը մեզ մերձենում է։

«Իմաստունը ամբողջ կեանքի մէջ իր մահն է որոնում, ուստի և մահը նրա համար սարսափելի չէ»։

Բայց ահա թէ ինչ է ասում Շօպէնհաուէրը.

«Ըմբռնելով տիեզերքի ներքին էութիւնը իբրև կամք, և

բոլոր երեւոյթների մէջ՝ բնութեան մութ ույժերի անգիտակցական ձգտումներից մինչեւ մարդու լիակատար գիտակցութեամբ գործողութիւնը. ընդունելով այդ կամքի միմիայն առարկայականութիւնը, մենք ոչ մի պարագայում չենք խուսափելու այն հետեւանքից, որով կամքի ազատ ժխտման, ինքնոչնչացման հետ միասին կանյայտանան եւ բոլոր այն երեւոյթները, այն մշտական ձգտումն ու հակումը առանց նպատակի ու հանգստի՝ առարկայականութեան բոլոր աստիճաններում, որի մէջ եւ որի միջոցով կազմուած է տիեզերքը, կանյայտանան հետեւողական ձեերի հետ միասին նրա բոլոր երեւոյթները իրանց ընդհանուր ձեերով, տարածութեամբ եւ ժամանակով, եւ վերջապէս՝ նաեւ նրա վերջին հիմնական ձեը—սուբիեկտ ու օբիեկտը։ Չկայ կամք, չկայ պատկերացում, չկայ նաեւ տիեզերք։ Մեր առջեւ, ի հարկէ, մնում է միմիայն ոչնչութիւնը։ Բայց այն, որը ընդդիմանում է դէպի ոչնչութիւն թեքուող այդ փոխանցմանը—մեր բնութիւնը չէ՞ որ միմիայն առ գոյութիւն ձգտող այդ կամքըն է, որ կազմում է ե՛ւ մեր սեփական, ե՛ւ մեր տիեզերքի էութիւնը։ Իսկ որ մենք այնպէս սարսափում ենք ոչնչութիւնից կամ, որ նոյն բանն է, այնքա՛ն ապրել ենք կամենում, նշանակում է միայն, որ մենք ոչ այլ ինչ ենք, եթէ ոչ կեանքի այդ կամեցողութիւնը, որից զատ՝ ոչինչ չգիտենք։ Ուստի եւ այն, ինչ որ կը մնայ մեզ համար կեանքի լիակատար ոչնչացումից, մեզ, որ տակաւին լի ենք կամքով, անշուշտ ոչնչութիւն է. բայց, եւ ընդհակառակը, նրանց համար, որոնց մէջ կամքը իրանից դարձել ու հրաժարուել է, նրանց համար մեր այս այնքան իրական տիեզերքը իր բոլոր արեւներով ու ծիր-կաթիններով ոչնչութիւն է»։

«Ունայնութիւն ունայնութեանց,—ասում է Սողոմոնը.—ունայնութիւն ունայնութեանց եւ ամենայն ինչ ունայնութիւն է։ Ի՞նչ օգուտ մարդուն՝ արեւի տակ կատարած իր բոլոր աշխատանքներից։ Մի ազգ գնում է եւ ուրիշ ազգ է գալիս, բայց երկիրը մնում յաւիտեան։ Ինչ՞ որ եղել է, նոյնը պիտի լինի. ինչ որ գործուած է, նոյնը պիտի գործուի. եւ արեւի տակ ոչինչ նոր բան չկայ։ Կա՞յ արդեօք մի այնպիսի բան, որի համար ասուէր, թէ «նայի՛ր, սա նոր բան է». մեզանից առաջ անցած դարերի մէջ արդէն եղել են այդպիսիք։ Չկայ անցեալի յիշատակը, նոյն եւ ապագայում լինելիքի յիշատակը՝ չէ մնալու ապագայում եկողների մէջ։ Ես, Էկկլեսիաստէս, Երուսաղէմի մէջ Իսրայէլի վրայ թագաւոր եղայ։ Եւ իմ սրտին ես յանձնեցի իմաստութեամբ քննելու եւ փորձելու այն ամենը, ինչ որ

լինում է երկնքի տակ. այդ ծանր զբաղմունքը Աստուած տուեց մարդու որդիներին, որ նրանք վարժուեն դրանում։ Արևի տակ բոլոր կատարուած գործերը տեսայ. և ահա բոլորն էլ ունայնութիւն ու հոգու տառապանք է... Ես իմ սրտի մէջ այսպէս խօսեցի. ահա ես մեծացայ ու Երուսաղէմի մէջ ինձանից առաջ եղողներից ամենից աւելի իմաստութիւն ստացայ, և իմ սիրտը շատ իմաստութիւն ու գիտութիւն տեսաւ։ Եւ իմ սիրտը թողեցի՝ իմաստութիւնը ճանաչելու և խենթութիւնն ու յիմարութիւնը գիտենալու համար. հասկացայ, որ դա էլ հոգու տանջանք է։ Որովհետև շատ իմաստութեան մէջ շատ տրտմութիւն կայ, և իր գիտութիւնը աւելացնողը՝ իր վիշտն է աւելացնում։

«Ասացի ես իմ սրտի մէջ. եկ այժմ քեզ փորձեմ ուրախութեան միջոցով, ուտի և վայելէ բարիքներ. սակայն դա էլ ունայնութիւն է։ Ծիծաղի մասին ես ասացի, թէ դա յիմարութիւն է, իսկ ուրախութեան մասին,. թէ՝ ինչ է սրա արածը։ Սրտումս խորհեցի, որ մարմինս գինով զուարթացնեմ և իմաստութեան առաջնորդութեամբ անմտութիւնը ճանաչեմ, որ տեսնեմ, թէ որն է բարին մարդկանց որդիների համար, որ պէտք է անէին նրանք երկնքի տակ իրանց կեանքի բոլոր օրերում։ Նախաձեռնեցի մեծամեծ գործեր, ինձ համար տներ կառուցի և այգիներ տնկեցի։ Ինձ համար պարտէզներ ու դրախտներ շինեցի և նրանց մէջ ամեն տեսակ պտղատու ծառեր տնկեցի։ Ինձ համար ջրամբարներ շինեցի, որպէս զի նրանցով ծառ բուսցնող անտառը ոռոգուի։ Ծառաներ ու աղախիններ ձեռք բերեցի և իմ տան մէջ ծնուած ծառաներ ունեցայ. և ինձանից առաջ Երուսաղէմում եղողներից ամենից աւելի արջառներ ու հօտեր ես ունեցայ։ Ինձ համար նաև՝ արծաթ ու ոսկի, թագաւորներից ու գաւառներից գանձեր դիզեցի. ձեռք բերեցի ինձ մօտ երգիչ այրեր ու կանայք և մարդկանց որդիների ամեն տեսակ շքեղութիւն ու զուարճութիւնները։ Եւ Երուսաղէմում ինձանից առաջ եղողների մէջ ամենից մեծը ես եղայ ու բարգաւաճեցի. և իմ իմաստութիւնն էլ ինձ մօտ էր մնում։ Եւ իմ աչքերի ամեն ցանկութիւնը ես նրանցից չարգելեցի և իմ սիրտը՝ ամեն տեսակ ուրախութիւնից զուրկ չթողեցի։ Եւ ես իմ ձեռքերի կատարած բոլոր գործերի և կատարելու համար իմ գործ դրած ամեն մի աշխատանքիս վրայ նայեցի, և ահա՝ բոլորը ունայնութիւն է ու հոգու տանջանք, և ոչ մի օգուտ չկար նրանցից արևի տակ։ Ու դարձայ ես տեսնելու՝ իմաստութիւնը, նաև յիմարութիւնն ու անմտութիւնը... Սակայն իմացայ, որ նրանց բոլորին էլ պատահած

դիպուածը միատեսակ է։ Այն ժամանակ ես իմ սրտի մէջ ասացի. որովհետև անմիտին պատահածը ինձ էլ պիտի պատահի, ուրեմն ես ինչու համար աւելի իմաստուն եղայ. այդ պատճառով իմ սրտում ասացի, որ այս էլ ունայնութիւն է։ Որովհետև ինչպէս անմիտին, այնպէս էլ իմաստունի համար յաւիտեան յիշատակ չկայ. այժմ եղած բաները ապագայ ժամանակում բոլորը պիտի մոռացուեն, և, աւա՜ղ, իմաստունն էլ անմիտի հետ հաւասար պիտի մեռնի։ Եւ զզուեցի ես կեանքից, որովհետև արևի տակ եղած գործերը ինձ զզուելի երևացին, որովհետև ամենայն ինչ ունայնութիւն ու հոգու տանջանք է։ Եւ զզուեցի ես արևի տակ գործ դրած իմ բոլոր աշխատանքից, որովհետև ինձանից յետոյ գալու մարդուն պիտի թողնեմ այն... Արևի տակ գործ դրած իր բոլոր աշխատանքից ու սրտի տանջանքից ի՞նչ օգուտ մարդուն։ Որովհետև նրա բոլոր օրերը լի են վշտերով, իսկ գործերը՝ տրտմութիւնով. նոյն իսկ գիշեր ժամանակ նրա սիրտը հանգստութիւն չունի։ Դա էլ ունայնութիւն է։ Անգամ ուտելն ու խմելը, իր աշխատանքով իր հոգին զուարճացնելը՝ մարդու ձեռքին չէ...

«Ամեն բանի և ամենքին միևնոյնն է պատահում. արդարին ու ամբարշտին, բարի մարդուն, մաքուրին ու անմաքուրին. զոհ անողին ու զոհ չանողին պատահածը միևնոյն բանն է. ինչպէս է բարի մարդը, այնպէս է և մեղաւորը, երդում անող և երդումից երկնչողը։ Արևի տակ կատարուած բոլոր գործերի վատութիւնը այն է, որ բոլորի ճակատագիրը մէկ է. և մարդկանց որդիների սիրտը լցուած է չարութեամբ, և խենթութիւնը իրանց սրտի մէջ է, երբ նրանք կենդանի են, իսկ յետոյ այն անցնում է մեռեալներին։ Ով գտնվում է կենդանիների մէջ՝ նա դեռ կունենայ յոյս, որովհետև ողջ շունը առաւել լաւ է, քան մեռած առիւծը։ Կենդանիները գիտեն, որ պիտի մեռնեն, իսկ մեռելները ոչինչ չգիտեն. ու չկայ նրանց համար վարձատրութիւն, որովհետև նրանց յիշատակը մոռացութեան է տրուած։ Ե՛ւ սէրը նրանց, և՛ ատելութիւնը, և՛ նախանձը կորան այլ ևս, չունեն նաև և ո՛չ մի բաժին արևի տակ կատարուող գործերի մէջ»։

Այսպէս է ասում Սողոմոնը, կամ նա, ով գրել է այդ խօսքերը։

Ահա թէ ինչ է ասում հնդկական իմաստութիւնը։

Սակիա-Մունին՝ այդ երիտասարդ, բախտաւոր արքայորդին, որից թաքցրել էին հիւանդութիւնները, ծերութիւնն ու մահը, գնում է զբօսանքի և տեսնում մի սոսկալի ծերունու՝

անատամ ու փցլնքոտ։ Արքայորդին, որից մինչև այժմ թաքնուած էր ծերութիւնը, զարմանում է ու հարցնում իր կառապանին, թէ ի՞նչ բան է դա և ինչո՞ւ այդ մարդը հասել է այդպիսի խղճալի, զզուելի դրութեան։ Եւ երբ նա իմանում է, որ դա մարդկանց ընդհանուր ճակատագիրն է, որ իրան՝ երիտասարդ արքայորդուն ևս անխուսափելի կերպով նոյնն է սպառնում, նա այլ ևս չէ կարողանում գնալ զբօսնելու և հրամայում է վերադառնալ, որպէս զի այդ մասին խորհի։ Նա փակվում է միայնակ ու խորհում։ Եւ, հաւանական է, հնարում է իր համար որևէ մխիթարութիւն, որովհետև նա կրկին ուրախ ու երջանիկ դուրս է գալիս զբօսնելու։ Սակայն այս անգամ նրան հանդիպում է մի հիւանդ։ Նա տեսնում է հիւծուած, կապտած, դողդողացող, պղտոր աչքերով մի մարդու։ Արքայորդին, որից թաքնուած էին հիւանդութիւնները, կանգ է առնում ու հարցնում, թէ ի՞նչ բան է դա։ Եւ երբ նա իմանում է, որ դա հիւանդութիւն է, որին ենթակայ են բոլոր մարդիկ և որ նա ինքն ևս, առողջ ու երջանիկ արքայորդին, հէնց վաղը կարող է հիւանդանալ միևնոյն կերպ, նա կրկին տրամադրութիւն չէ ունենում զուարճանալու և հրամայում է վերադառնալ, կրկին որոնում է անդորրութիւն և, երևի, գտնում է, որովհետև երրորդ անգամ ևս գնում է զբօսնելու. բայց երրորդ անգամ նա տեսնում է մի նոր տեսարան ևս. Նա տեսնում է, որ ինչ-որ բան են տանում։ «Այդ ի՞նչ է»։—Մեռած մարդ։ «Ինչ բան է մեռածը»,—հարցնում է արքայորդին։ Նրան ասում են, որ մեռած լինել՝ նշանակում է լինել այնպէս, ինչպէս է այս մարդը։ Արքայորդին մօտենում է ննջեցեալին, բաց է անում և նայում նրա վրայ։ «Ի՞նչ կը լինի սրան յետոյ»,—հարցնում է արքայորդին։ Նրան ասում են, որ մեռեալին կը թաղեն հողի մէջ։ «Ինչո՞ւ»։ Նրա համար, որ նա այլ ևս երբէք կենդանի չէ լինելու, և նրանից կարտադրուի միմիայն գարշահոտութիւն և որդեր։ «Եւ դա բոլո՞ր մարդկանց ճակատագիրն է։ Ինձ հե՞տ էլ նոյնը կը լինի։ Ի՞նձ կը թաղեն, և ինձանի՞ց էլ պիտի դուրս գայ գարշահոտութիւն, և ինձ պիտի ուտեն որդե՞րը»։ Այո։ «Յե՞տ դարձիր։ Ես զբօսնելու չեմ գնայ և այլ ևս երբէք չեմ գնալու»։

Եւ Սակիա-Մունին չկարողացաւ կեանքում մխիթարութիւն գտնել. Նա վճռեց, որ կեանքը մեծագոյն չարիք է, և հոգու ամբողջ զօրութիւնը գործադրեց, որպէս զի ազատուի նրանից ինքը և ազատի ուրիշներին։ Եւ ազատի այնպէս, որ մահից յետոյ կեանքը որևէ կերպ չվերականգնուի, որպէս զի

արմատից խպառ ոչնչացնէ կեանքը։ Այդ է ասում հնդկական ամբողջ իմաստութիւնը։

Ահա այն շեշտակի պատասխանները, որ տալիս է մարդկային իմաստութիւնը, երբ նա պատասխանում է կեանքի հարցին։

«Մարմնի կեանքը չարիք է և կեղծիք։ Ուստի և այդ մարմնական կեանքի ոչնչացումը երանութիւն է, և մենք պէտք է ցանկանք այդ»,—ասում է Սոկրատէսը։

«Կեանքը այն է, ինչ որ չպէտք է լինէր. չարիք է. և փոխանցումը դէպի ոչնչութիւն՝ կեանքի միակ երանութիւնն է»,—ասում է Շոպէնհաուէրը։

«Տիեզերքում ամէն ինչ—և՛ յիմարութիւնը, և՛ իմաստութիւնը, և՛ հարստութիւնը, և՛ աղքատութիւնը, և՛ զուարճութիւնը, և՛ վիշտը—ամէնայն ինչ ունայնութիւն է և դատարկութիւն։ Մարդը կը մեռնի և ոչինչ չի մնայ։ Եւ դա յիմարութիւն է»,--ասում է Սողոմոնը։

«Տառապանքների, թուլացման, ծերութեան և մահուան անխուսափելիութեան գիտակցութեան հետ ապրել չէ կարելի. անհրաժեշտ է անձը կեանքից ազատել, կեանքի ամէն հնարաւորութիւնից»,—ասում է Բուդդան։

Եւ այն, ինչ որ ասացին այս զօրեղ գլուխները, ասում էին, մտածում ու զգում նրանց պէս միլիօն-միլիօնաւոր մարդիկ։ Եւ մտածում, և զգում եմ նաև ես։

Այսպէս ուրեմն՝ գիտութիւնների շրջանում իմ թափառումները ոչ միայն ինձ դուրս չբերին իմ յուսահատութիւնից, այլ միմիայն սաստկացրին այն։ Գիտութիւններից մէկը չպատասխանեց կեանքի հարցին, միւսը սակայն շեշտակի պատասխանեց, հաստատելով իմ յուսահատութիւնն ու ցոյց տալով, որ այն, որին ես հասել եմ, իմ մոլորումների արդիւնքը չէ, խելքիս հիւանդագին դրութեան, ընդհակառակը, նա հաստատեց իմ առաջև այն, որ ես մտածել եմ ուղիղ և միացել մարդկութեան զօրեղ գլուխների եզրափակումներին։

Ինքս ինձ խաբելու կարիք չունեմ։ Ամէնայն ինչ ունայնութիւն է։ Երջանիկ է նա, ով չէ ծնուել. մահը կեանքից լաւ է. պէտք է նրանից ազատուել։

## VII

Գիտութեան մէջ չգտնելով բացատրութիւն, ես այդ բացատրութիւնը սկսեցի որոնել կեանքի մէջ, յոյս ունենալով գտնել այն՝ ինձ շրջապատող մարդկանց մէջ։ Եւ ես սկսեցի ինձ նման մարդկանց զննել, թէ ինչպէս են ապրում նրանք իմ շուրջը և ինչպէս են վերաբերւում այն հարցին, որը ինձ հասցրել է յուսահատութեան։

Եւ ահա թէ ինչ գտայ ես ա՛յն մարդկանց մէջ, որոնք ինձ հետ հաւասար կացութեան մէջ են գտնվում թէ ըստ կրթութեան և թէ կենցաղավարութեան։

Ես հասկացայ, որ իմ շրջանի մարդկանց համար կայ չորս ելք՝ ազատուելու համար այն սոսկալի կացութիւնից, որի մէջ գտնվում ենք մենք բոլորս։

Առաջին ելքը—դա անգիտութեան ելքն է։ Նա կայանում է այն բանում, որ չգիտենաս, չհասկանաս այն, որ կեանքը չարիք է ու անիմաստութիւն։ Այդ կարգի մարդիկ՝ մեծ մասամբ կանայք են ու տակաւին երիտասարդ մարդիկ կամ շատ բթամիտները, որոնք դեռ չեն ըմբռնել կեանքի այն խնդիրը, որը առաջ էր նետուել Շոպէնհաուէրի, Սողոմոնի, Բուդդայի առջև։ Նրանք չեն տեսնում ո՛չ իրանց սպասող վիշապին, ո՛չ թփերը կրծոտող մկներին, ա՛յն թփերը, որոնց փարուել են նրանք ու ծծում մեղրի կաթիլները։ Սակայն նրանք մեղրի այդ կաթիլները լիզում են միմիայն մինչև մի որոշ ժամանակ. հէնց որ մի որևէ պատճառ նրանց ուշադրութիւնը թեքի վիշապի ու մկների կողմը՝ նրանց լիզելուն վերջ կը դրուի։ Այդպիսիներից ես սովորելու ոչինչ չունեմ. չէ կարելի դադարել գիտենալուց այն, ինչ որ գիտես։

Երկրորդ ելքը—դա էպիկուրէականութեան ելքն է։ Նա կայանում է այն բանում, որ գիտենալով հանդերձ կեանքի անյուսալիութիւնը՝ օգտուես ժամանակաւորապէս այն բարիքներով, որոնք արդէն գոյութիւն ունեն. չնայես ո՛չ վիշապի վրայ, ո՛չ մկների, այլ ամենալաւ կերպով լիզես մեղրը, մանաւանդ եթէ այդպիսին շատ է կուտակուած։ Այդ ելքը Սողոմոնը այսպէս է արտայայտում։

«Եւ ես ուրախութիւնը գովեցի, որովհետև ոչինչ աւելի լաւ չկայ մարդու համար արևի տակ, քան ուտելը, խմելն ու զուարճանալը. դա է, որ ուղեկցում է նրա աշխատանքին՝ իր կեանքի օրերում, որ տուել է նրան Աստուած արևի տակ։

«Եւ այդպէս՝ գնա՛, հացդ ուրախութեամբ կեր ու գինիդ ուրախ սրտով խմիր... Քո սիրած կնոջդ հետ կեանք վայելիր ունայն կեանքիդ բոլոր օրերում, որովհետև դա արևի տակ կատարած քո աշխատանքի ու կեանքի բաժինն է... Այն ամենը, ինչ որ կարող է գործել քո ձեռքը, ոյժով գործիր, որովհետև գնալու գերեզմանիդ մէջ ոչ գործ կայ, ոչ խորհուրդ, ոչ գիտութիւն և ոչ իմաստութիւն»։

Այսպէս է պահպանում մեր շրջանի մարդկանց մեծամասնութիւնը իր մէջ կեանքի կարելիութիւնը։ Այն պայմանները, որոնց մէջ գտնվում են նրանք, տալիս են աւելի շատ բարիք, քան չարիք, իսկ բարոյական բթութիւնը տալիս է նրանց հնարաւորութիւն մոռանալու այն, որ իրանց ելքի արգասիքը պատահական է, որ չէ կարելի բոլորին էլ 1000 կին և պալատներ ունենալ, ինչպէս էր Սողոմոնը, որ 1000 կին ունեցող իւրաքանչիւր մարդու վրայ ընկնում է 1000 մարդ առանց կնոջ և իւրաքանչիւր պալատի վրայ ընկնում է 1000 մարդ, որոնց ճակատի քրտինքով է կառուցուել նա, և որ այն պատահականութիւնը, որը երէկ ինձ դարձրել էր Սողոմոն, վաղը կարող է դարձնել ինձ Սողոմոնի ստրուկ։ Իսկ երևակայութեան բթութիւնը տալիս է այդ մարդկանց հնարաւորութիւն մոռանալու այն, ինչ հանգիստ չէր տալիս Բուդդային,—հիւանդութեան, ծերութեան և մահուան անխուսափելիութիւնը, որը այսօր կամ էգուց կաւերէ բոլոր այդ բաւականութիւնները։

Այդպէս խորհում ու զգում է մեր ժամանակի և կենցաղավարութեան մարդկանց մեծամասնութիւնը։ Այն, ինչ որ այդ մարդկանցից ոմանք պնդում են, թէ իրանց մտքի բթութիւնն ու երևակայութիւնը՝ փիլիսոփայութիւն է, որը նրանք համարում են պօզիտիվ, ըստ իս՝ չէ տարբերում նրանց այն կարգի մարդկանցից, որոնք հարցը չտեսնելու համար մեղր են լիզում։ Եւ այդ տեսակի մարդկանց նմանուել ես չկարողացայ. չունենալով նրանց երևակայութեան բթութիւնը՝ ես անկարող էի արհեստական կերպով վերարտադրել այն իմ մէջ։ Որպէս ամեն մի կենդանի մարդ, ես անկարող էի դարձնել աչքս մկներից ու վիշապից, քանի որ մի անգամ նա արդէն տեսել էր նրանց։

Երրորդ ելքը—դա ոյժի և էներգիայի ելքն է։ Նա կայանում է նրանում, որ ըմբռնելով կեանքի չարիք ու անիմաստութիւն լինելը՝ ոչնչացնես նրան։ Այդպէս են վարվում սակաւաթիւ, զօրեղ և հետևողական մարդիկ։ Ըմբռնելով նրանց գլխին խաղացուած կատակի ամբողջ անմտութիւնը և ըմբռնե-

լով, որ մեռածների երանութիւնը առաւել է՝ քան կենդանիներինը՝ և որ աւելի լաւ է անէանալ,—Նրանք հէնց այդպէս էլ վարվում են ու միանգամից վերջ դնում այդ յիմար կատակին, մանաւանդ որ միջոցներ էլ կան. պարան՝ վզի համար, ջուր, դանակ՝ սիրտը խրելու, երկաթուղու վրայ՝ գնացքները։ Եւ այդպէս վարուողների թիւը մեր շրջանի մարդկանց մէջ աւելի և աւելի ստուարանում է։ Եւ այդպէս վարվում են մարդիկ մեծ մասամբ կեանքի ամենալաւ շրջանում, երբ հոգու ոյժերը գտնվում են ամենածաղկեալ դրութեան մէջ, մինչդեռ մարդկային բանականութիւնը նուաստացնող սովորութիւններ՝ իւրացուած են տակաւին շատ քիչ։

Ես տեսնում էի, որ դա ամենագովելի ելքն է, և ուզում էի ըստ այնմ վարուել։

Չորրորդ ելքը—դա թուլութեան ելքն է։ Նա կայանում է նրանում, որ ըմբռնելով կեանքի չարիքն ու անիմաստութիւնը՝ այնուամենայնիւ քարշ տաս նրան, նախապէս համոզուած լինելով, որ դրանից ոչինչ չէ կարող դուրս գալ։ Այդ կարգի մարդիկ գիտեն, որ մահը կեանքից լաւ է, բայց չունենալով ոյժ բանականօրէն վարուելու՝ վերջ տալու շուտով կեղծիքին ու սպանելու իրան՝ դեռ ևս ինչ-որ բան են ակնկալում։ Դա թուլութեան ելքն է, որովհետև եթէ ես ճանաչում եմ լաւագոյնը և նա իմ տիրապետութեան տակ է, ապա ինչո՞ւ չպէտք է յանձնուեմ այդ լաւագոյնին... Ահա ես գտնվում էի այդ կարգի մարդկանց մէջ։

Այդպէս՝ իմ կարգի մարդիկ չորս ճանապարհով են փրկվում սոսկալի հակասութիւնից։ Որքան էլ ես լարէի իմ մտաւոր ուշադրութիւնը, այս չորս ելքից զատ ուրիշը չգտայ։ Առաջին ելքը. չհասկանալ այն, որ կեանքը անմտութիւն է, ունայնութիւն ու չարիք և որ աւելի լաւ է չապրելը։ Ես չէի կարող չիմանալ այդ, և երբ մի անգամ իմացայ՝ այլ ևս անկարող էի փակել աչքերս այդ բանի վրայ։ Երկրորդ ելքը. օգտուել կեանքից այնպէս, ինչպէս որ նա այժմ կայ, առանց մտածելու ապագայի վերաբերմամբ։ Այդ ևս անել ես չէի կարող։ Ես, ինչպէս և Սակիա-Մունին, չէի կարող որսի գնալ, երբ գիտէի ծերութեան, տառապանքի և մահուան գոյութիւնը։ Իմ երևակայութիւնը շատ վառ էր։ Բացի այդ՝ ես չէի կարող ուրախանալ րօպէական պատահականութեամբ, որը մի ակնթարթով միայն շպրտում է ինձ իմ բաժին բաւականութիւնը։ Երրորդ ելքը. ըմբռնելով, որ կեանքը չարիք է և յիմարութիւն՝ խզել այն, սպանել ինքդ քեզ։ Ես այդ ըմբռնեցի,

սակայն, չգիտեմ ինչու, տակաւին չէի սպանում ինքս ինձ։ Չորրորդ ելքը․ ապրել Սողոմոնի և Շոպէնհաուէրի դրութեամբ․ գիտենալով հանդերձ, որ կեանքը քո գլխին խաղացուած մի յիմար կատակ է, միևնոյն ժամանակ ապրել, լուացուել, հագնուել, ճաշել, խօսել և նոյն իսկ գրքոյկներ գրել։ Դա ինձ համար զզուելի էր և տանջող, սակայն այնուամենայնիւ ես մնում էի այդ կացութեան մէջ։

Այժմ ես տեսնում եմ, որ եթէ ես ինձ չսպանեցի, ապա դրա պատճառը՝ իմ մտքերի անարդար լինելու աղօտ գիտակցութիւնն էր։ Որքան էլ համոզիչ ու ոչ-կասկածելի լինէր իմ և իմաստուն մարդկանց մտքերի ընթացքը, որ ինձ հասցրեց կեանքի անիմաստութեան գաղափարին, իմ մէջ մնում էր մի անհասկանալի կասկած՝ դատողութիւններիս ճշմարտութեան նկատմամբ։

Կասկածը այսօրինակ էր և ես, իմ բանականութիւնը ընդունեցինք, որ կեանքը հակաբանական է։ Եթէ չկայ բարձրագոյն բանականութիւն (նա չկայ և ոչ մի բան այդ ապացուցանել չէ կարող), ապա ուրեմն բանականութիւնը ինձ համար կեանքի ստեղծագործողն է։ Եթէ չլինէր բանականութիւնը՝ ինձ համար կեանք էլ չէր լինի։ Ի՞նչպէս ուրեմն այդ բանականութիւնը կարող է ժխտել կեանքը, երբ նա ինքն է կեանքի ստեղծագործողը։ Կամ թէ՝ մի այլ կողմից. եթէ չլինէր կեանքը, չէր լինի և իմ բանականութիւնը, ուստի և բանականութիւնը կեանքի զաւակն է։ Կեանքը ամեն ինչ է։ Բանականութիւնը՝ կեանքի արգասիքն է. և այդ բանականութիւնը՝ ժխտում է հէնց նոյն կեանքը։ Ես զգում էի, որ այստեղ ինչ-որ մի բան կայ։

Որ կեանքը մի անմիտ չարիք է, դա անկասկած է,—ասում էի ինքս ինձ։—Բայց ինքս ապրում էի և տակաւին ապրում եմ, և ապրել ու ապրում է ամբողջ մարդկութիւնը։ Ուրեմն ի՞նչ։ Ինչու՞ է ապրում, երբ կարող է չապրել։ Ուրեմն ես եմ Շոպէնհաուէրի հետ այնքան խելացին, որ միայն ըմբռնեցի կեանքի անիմաստ և չարիք լինելը։

Կեանքի դատարկութեան նկատմամբ դատողութիւնը այնքան էլ խորամիտ բան չէ, որովհետև շատ վաղուց այդ անում էին բոլորը, նոյն և ամենահասարակ մարդիկ, բայց և այնպէս ապրել են ու ապրում։ Ուրեմն ինչ. նրանք բոլորն էլ ապրում են և երբէք չե՛ն մտածում կասկածելու կեանքի խելացիութեան նկատմամբ։

Իմ գիտութիւնը՝ ամրապնդուած իմաստունների իմաս-

տութեամբ՝ բացեց իմ առջև այն, որ տիեզերքում ամեն ինչ—գործարանաւոր թէ անգործարանաւոր—կառուցուած է չափազանց խելացի կերպով, միմիայն՝ իմ դրութիւնն է յիմար։ Իսկ այդ խենթերը—մարդկանց ահագին զանգուածներ—ոչինչ չգիտեն այն մասին, թէ ինչպէս է կառուցուած տիեզերքում գործարանաւորն ու անգործարանաւորը, և թւում է նրանց, թէ կեանքը դրուած է անչափ խելացիօրէն։

Եւ իմ գլխում ծագում էր նաև այս միտքը. իսկ եթէ ես որևէ բան դեռ չեմ իմացե՞լ։ Չէ՞ որ չգիտութիւնը այդպէս է վարվում։ Չէ՞ որ չգիտութիւնը միշտ հէնց այդ է ասում։

Երբ նա որևէ բան չէ իմանում, նա ասում է, թէ յիմար բան այն, ինչ որ ինքը չգիտէ։ Իսկապէս դուրս է գալիս, որ կայ մարդկային մի ամբողջութիւն, որ ապրել և ապրում է՝ կարծես ըմբռնելով իր կեանքի իմաստը, ապա թէ ոչ՝ այդ չըմբռնած՝ նա ապրել չէր կարող. իսկ ես ասում եմ, որ այդ ամբողջ կեանքը անմտութիւն է, ուստի և ապրել չեմ կարողանում։

Ոչ ոք մեզ չէ արգելում ժխտել կեանքը ինքնասպանութեամբ։ Բայց այդ պարագայում՝ սպանիր քեզ և դատողութիւն էլ չես անի։ Չես հաւանում կեանքը՝ սպանիր քեզ։ Բայց եթէ ապրում ես և չես կարողանում ըմբռնել կեանքի իմաստը, ապա դադարեցրու այն և մի՛ պտոյտ գայ այդ կեանքի մէջ՝ պատմելով ու նկարագրելով այն, որ դու այդ կեանքը չես հասկանում։ Մտել ես ուրախ ընկերութեան մէջ, բոլորը ուրախ են, բոլորը գիտեն, թէ ինչ են անում, իսկ թէ քեզ համար ձանձրալի է ու զզուելի՝ հեռացիր։

Իսկապէս ասած մենք՝ ինքնասպանութեան անհրաժեշտութեան մէջ համոզուածներս ու այն ի կատար չածողներս՝ ոչ այլ ինչ ենք, եթէ ոչ միանգամայն թուլամորթ մարդիկ, անհետևողականներ և, պարզն ասած, իրանց յիմարութեամբ պարծեցող անմիտ մարդիկ, ինչպէս յիմարը իր նախշուն տոպրակով։

Չէ՞ որ մեր իմաստութիւնը, որքան էլ նա հաստատուն լինի, չտուեց մեզ մեր կեանքի իմաստի գիտութիւնը։ Իսկ ամբողջ մարդկութիւնը, կեանք շինողները, միլիօնաւոր մարդիկ՝ չունեն կասկած կեանքի իմաստի վերաբերութեամբ։

Իսկապէս շատ հին, հին ժամանակներից, կեանքի սկզբնաւորութեան օրից, որի մասին ես քիչ բան գիտեմ, մարդիկ ապրել են՝ ունենալով հանդերձ միևնոյն դատողութիւնը կեանքի դատարկութեան մասին,—որը ինձ ցոյց տուեց նրա անիմաս-

տութիւնը,—այնուամենայնիւ ապրում էին, ապրում, տալով այդ կեանքին որոշ իմաստ։

Այն օրից, երբ սկսուեց մարդկանց կեանքը, նրանք արդէն ունէին նրա իմաստը և վարում այդ կեանքը, որը և հասել է մինչև իմ օրերը։ Այն ամենը, ինչ որ կայ իմ մէջ և իմ շուրջը,—մարմնականն ու անմարմինը,—այդ ամենը նրանց կեանքի գիտութեան արգասիքն է։ Մտքի այն զէնքերը, որոնցով ես դատում ու դատապարտում եմ այդ կեանքը, այդ բոլորը ոչ թէ իմ, այլ նրանց ստեղծածն է։ Ես ինքս ծնուել, դաստիարակուել, աճել եմ՝ շնորհիւ նրանց։ Նրանք գտան երկաթը, սովորեցրին անտառ կտրել, ընտելացրին կովեր, ձիեր, սովորեցրին ցանել, սովորեցրին միասին ապրել, կարգաւորեցին մեր կեանքը. նրանք սովորեցրին ինձ մտածել, խօսել։ Եւ ես—որ նրանց արտադրութիւնն եմ, նրանց կերակրածը, խմեցրածը, նրանց սովորեցրածը, նրանց մտքերով ու խօսքերով մտածողը—ես ապացուցեցի, որ նրանք անհեթեթութիւն են։

«Այստեղ ինչ-որ բան պակաս է,—ասում էի ինքս ինձ։—Որևէ տեղ ես սխալուել եմ»։ Սակայն ինչո՞ւմն էր սխալը, ես ո՛չ մի կերպ չէի կարողանում գտնել։

---

VIII

Բոլոր այն կասկածները, որ այժմ այսպէս թէ այնպէս ես կարողանում եմ արտայայտել որոշ կապակցութեամբ, առաջ՝ ես անկարող էի արտայայտել։ Այն ժամանակ ես զգում էի, միայն, որ՝ ինչքան էլ տրամաբանօրէն անխուսափելի լինէին մեծագոյն մտածողներից ամրապնդուած իմ եզրակացութիւնները կեանքի ունայնութեան մասին, այնուամենայնիւ մի ինչ-որ բան նրանց մէջ պակասում էր։ Արդեօք հէնց դատողութեան մէջ էր թէ՞ հարցը դնելու եղանակի, ես չգիտէի. սակայն զգում էի միայն, որ բանական համոզմունքը կատարեալ էր, բայց այդ՝ բաւական չէր։ Այդ բոլոր եզրակացութիւնները ինձ չէին կարող համոզել այնպէս, որ ես անէի այն, ինչ որ բղխում էր իմ դատողութիւններից, այսինքն՝ որ ես ինձ սպանէի։ Եւ ես ճշմարիտը խօսած չէի լինի, եթէ ասէի, որ բանականութեամբ եմ հասել այն մտքին, որին հասել եմ և չեմ ըս-

պանել ինձ։ Բանականութիւնս գործում էր, բայց գործում էր և մի այլ բան, որը չեմ կարող անուանել ուրիշ կերպ, քան՝ կեանքի գիտակցութիւն։ Գործում էր նաև այն զօրութիւնը, որը ստիպում էր ինձ ուշադրութիւն դարձնել սրա և ոչ նրա վրայ, և հէնց այդ զօրութիւնը դուրս բերեց ինձ իմ յուսահատ դրութիւնից և միանգամայն այլ ուղղութիւն տուեց իմ բանականութեանը։ Այդ զօրութիւնը ստիպեց ինձ ուշադրութիւն դարձնել այն բանի վրայ, որ ես՝ ինձ նման հարիւրաւորների հետ՝ ամբողջ մարդկութիւնը չեմ կազմում, որ մարդկութեան կեանքը ինձ անծանօթ է։

Դիտելով իմ հասակակից մարդկանց սեղմ շրջանը, ես տեսնում էի միմիայն այն մարդկանց, որոնք խնդիրը չէին ըմբռնում, այլ ըմբռնում ու խլացնում էին այն՝ կեանքի արբեցումով, ըմբռնում ու դադար տալիս կեանքին, ըմբռնում ու թուլութեան շնորհիւ ապրում յուսահատ կեանքով։ Եւ ուրիշ տեսակ մարդկանց ես չէի պատահել։ Ինձ թւում էր, թէ գիտնականների, հարուստների ու պարապ մարդկանց սերտ շրջանը, որին ես պատկանում էի, կազմում է համայն մարդկութիւնը. իսկ այն՝ միլիարդներով՝ անցեալում ապրող և այժմ կենդանի՝ մարդիկ, դրանք մարդիկ չեն, այլ ինչ-որ անասուններ։

Որքան էլ տարօրինակ, անհաւատալի-անհասկանալի է երեւում այժմ ինձ համար այն, թէ՝ ինչպէս եմ ես կարողացել ինձ շրջապատողներին ամեն կողմից դիտել, դատելով մարդկութեան կեանքի մասին, ինչպէս եմ մինչ այն աստիճան ծիծաղելի կերպով մոլորուել, որ մտածել եմ, թէ իմ Սողոմոնական և Շոպէնհաուէրական կեանքը իսկական կեանքն է, բնական կեանքը, իսկ միլիարդաւոր մարդկանց կեանքը՝ ուշադրութեան ոչ-արժանի մի հանգամանք,—որքան էլ դա այժմ ինձ համար տարօրինակ է, ես տեսնում եմ, որ դա այդպէս էր։ Սնփական խելքի հպարտութեան մոլորութեամբ՝ ինձ կասկածից դուրս էր թւում, որ մենք Սողոմոնի և Շոպէնհաուէրի հետ հարցը դրել ենք միանգամայն ուղիղ և ճշմարիտ, որ այլ ոչինչ լինել չէր կարող, թւում էր այնքան կասկածից դուրս, որ բոլոր այդ միլիարդները պատկանում են նրանց, որոնք տակաւին չեն հասել հարցի ամբողջ խորութեան ըմբռնմանը, որ ես որոնում էի իմ կեանքի իմաստը, որ և ոչ մի անգամ չեմ մտածել, թէ «վերջապէս ինչ իմաստ են տալիս և էին իրանց կեանքին բոլոր այն միլիարդները, որոնք ապրել են անցեալում և ապրում են այժմ այս աշխարհում»։

Երկար ժամանակ ես ապրում էի խելագարութեան մէջ,

որը առանձնապէս յատուկ է մեզ՝ ոչ խօսքերով, այլ գործի մէջ՝ ամենաազատամիտ և գիտնական մարդկանց։ Բայց արդեօք իմ ինչ-որ ֆիզիքական մի տարօրինակ սիրոյ շնորհիւ էր՝ դէպի բանւորական ժողովուրդը, որը ստիպեց ինձ հասկանալ նրան և տեսնել, որ նա այնքան էլ յիմար չէ, ինչպէս մենք կարծում ենք կամ՝ արդեօք շնորհիւ իմ համոզմունքի անկեղծութեան էր, որ ես ոչինչ չեմ կարող իմանալ, բացի այն, ինչ որ ես կարող էի անել իբրև լաւագոյն գործ—կախւել,—զգում էի միայն, որ եթէ ես կամենում եմ ապրել և ըմբռնել կեանքի իմաստը, ապա այդ իմաստը պէտք է որոնել անշուշտ ոչ այն մարդկանց մէջ, որոնք կորցրել են կեանքի իմաստն ու կամենում են սպանել իրանց, այլ այն միլիարդ մարդկանց մէջ՝ անցեալում և այժմ ապրող՝ որոնք շինում են և իրանց ուսերին կրում իրանց և մեր կեանքը։ Եւ ես դարձայ նայելու անցեալում և այժմ ապրող հասարակ ստուար մասսաների, ոչ-գիտնական և ոչ-հարուստ մարդկանց վրայ, և տեսայ միանգամայն այլ բան։ Ես տեսայ, որ բոլոր այդ՝ անցեալում և այժմ միլիարդներով ապրող մարդիկ՝ բոլորը, սակաւ բացառութեամբ, չեն համապատասխանում իմ դասաւորութեանը, որ ես նրանց՝ խնդիրը չհասկացողներ համարել չեմ կարող, որովհետև նրանք իրանք էլ են դնում նոյն հարցը և անչափ հասարակօրէն պատասխանում նրան։ Համարել նրանց էպիկուրէականներ՝ դարձեալ չեմ կարող, որովհետև նրանց կեանքը դասաւորվում է աւելի շատ զրկանքներով ու տառապանքներով, քան բաւականութիւններով։ Համարել նըրանց՝ իրանց անիմաստ կեանքի մնացորդը անմիտ կերպով անցկացնող՝ ես դարձեալ չեմ կարող, որովհետև իրանց կեանքի իւրաքանչիւր գործողութիւնը, նոյն և մահը նրանք բացատրում են։ Սպանել ինքն իրան՝ նրանք համարում են մեծագոյն չարիք։ Դուրս էր գալիս, որ համայն մարդկութիւնը օժտուած է իմ կողմից չընդունուած և արհամարհուած մի ինչ-որ կեանքի իմաստի գիտութեամբ։ Դուրս էր գալիս, որ բանական գիտութիւնը չէ տալիս կեանքի իմաստ, բացասում է կեանքը· այն իմաստը սակայն, որը միլիարդաւոր մարդիկ, համայն մարդկութիւնը հաղորդում է կեանքին, հիմնուած է ինչ-որ ատելի մոլար գիտութեան վրայ։

Բանական գիտութիւնը՝ յանձին գիտնականների և իմաստունների՝ կեանքի իմաստը ժխտում է, իսկ մարդկանց ստուար զանգուածները, համայն մարդկութիւնը ընդունում են այդ իմաստը՝ հակաբանական գիտութեան մէջ։ Եւ այդ հակաբա-

նական գիտութիւնը այն հաւատքն է, որը ես անկարող եկայ մի կողմ շպրտել։ Դա Աստուածն է 1 և 3, դա 6 օրում ստեղծագործութիւնն է, դևերն ու հրեշտակները և այն ամենը, որը ես ընդունել չեմ կարող, քանի չեմ խելագարուած։

Սոսկալի էր իմ կացութիւնը։ Գիտէի, որ բանական գիտութեան ճանապարհի վրայ ես ոչինչ չեմ գտնի, բացի կեանքի ժխտումից, իսկ այնտեղ՝ դաւանանքի մէջ՝ ոչինչ, բացի բանականութեան ժխտումից, որը առաւել ևս անհնարին է, քան կեանքի ժխտումը։ Ըստ բանական գիտութեան՝ այնպէս էր դուրս գալիս, թէ երբ կեանքը չարիք է և մարդիկ գիտեն այդ. չապրելը մարդկանցից է կախուած, իսկ նրանք ապրել են և ապրում, և ես էլ եմ ապրել, թէպէտև վաղուց գիտեմ այն ևս, որ կեանքը անիմաստութիւն է և չարիք։ Ըստ դաւանանքի՝ դուրս էր գալիս, որ կեանքի իմաստը ըմբռնելու համար ես պէտք է հրաժարուեմ բանականութիւնից, այն բանից, որի համար իսկապէս հարկաւոր է իմաստը։

---

IX

Ստեղծվում էր մի հակասութիւն, որից դուրս գալու համար երկու ելք կար. կամ այն, ինչ որ ես անուանում էի բանական, այնքան էլ բանական չէր, ինչպէս կարծում էի ես. կամ այն, ինչ որ ինձ թւում էր բանականութիւնից զուրկ, այնքան էլ զուրկ չէր, ինչպէս կարծում էի ես։ Եւ ես սկսեցի վերաստուգել իմ բանական գիտութեան դատողութիւնների ընթացքը։

Վերաստուգելով բանական գիտութեան դատողութիւնների ընթացքը՝ ես գտայ այն միանգամայն կանոնաւոր։ Որ կեանքը ոչնչութիւն է՝ այդ մասին եզրակացութիւնը անխուսափելի էր, սակայն ես նկատեցի սխալը։ Սխալը նրանումն էր, որ ես իմ դրած հարցին համապատասխան չէի մտածում։ Հարցը այսօրինակ էր. ինչո՞ւ պէտք է ես ապրեմ, այսինքն՝ ի՞նչ մի այնպիսի իսկական, չոչնացող բան դուրս կը գայ իմ խաբուսիկ ոչնչացուող կեանքից, ի՞նչ իմաստ ունի իմ վախճանական գոյութիւնը այս անվախճան տիեզերքի մէջ։ Եւ որպէս զի կարողանամ պատասխանել այս հարցին, ես ուսումնասիրում էի կեանքը։ Կեանքի բոլոր հնարաւոր հարցերի լուծումը, ըստ ե-

բնոյթին, ինձ չէին կարող բաւականացնել, որովհետև իմ հարցը, որքան էլ նա սկզբում հասարակ երևայ, իր մէջ է պարփակում վախճանականը անվախճանով բացատրելու պահանջը և ընդհակառակը։

Ես հարցնում էի. ո՞րն է իմ կեանքի արտաքոյ ժամանակի, արտաքոյ պատճառի, արտաքոյ տարածութեան նշանակութիւնը։ Իսկ պատասխանում էի ես հարցին. ո՞րն է իմ կեանքի ժամանակաւոր, պատճառական, տարածական նշանակութիւնը... Դուրս եկաւ այն, որ մտքի երկար աշխատանքից յետոյ ես պատասխանեցի՝ ոչ մի։

Դատողութիւններիս մէջ ես շարունակ հաւասարեցնում էի վախճանականը վախճանականի հետ և անվախճանականը անվախճանականի հետ, թէև այլ կերպ էլ ես անկարող էի վարուել, ուստի և դուրս էր գալիս այն, ինչ որ պէտք է դուրս գար. զօրութիւնը զօրութիւն է, նիւթը նիւթ, կամքը կամք, անվախճանականը անվախճանական, ոչնչութիւնը ոչնչութիւն, որից յետոյ ոչինչ դուրս գալ չէր կարող։

Սա նման էր այն բանին, երբ մտածում ես լուծել հաւասարութիւններ մաթեմատիկայի մէջ, լուծում ես նոյնութիւններ։ Մտածողութիւնների ընթացքը կանոնաւոր է, սակայն ի վերջոյ ստացվում է այս պատասխանը. A-ն հաւասար է A-ի, կամ՝ $X=X$, կամ՝ $O=O$. Նոյնը պատահեց և իմ դատողութիւնների հետ՝ իմ կեանքի նշանակութեան հարցի նկատմամբ։ Այդ հարցի վերաբերմամբ գիտութեան տուած պատասխանները՝ միմիայն նոյնութիւններ են։

Եւ յիրաւի՝ մաքուր ու զուտ գիտութիւնը, այն գիտութիւնը, որը սկսում է լիակատար կասկածով ամեն ինչի նկատմամբ, ինչպէս դա արեց Դեկարտը, մի կողմն է նետում հաւատքով թոյլատրած իւրաքանչիւր գիտութիւն և ամեն ինչ սկըզբից հիմնում բանականութեան և փորձի օրէնքների վրայ,—և անկարող է տալ կեանքի հարցին մի այլ պատասխան, քան այն, ինչ որ ես ստացայ,—պատասխանը անորոշ է։ Ինձ սկըզբում միայն թւում էր, թէ գիտութիւնը դրական պատասխան տուեց—Շոպէնհաուէրի պատասխանը.—կեանքը չունի իմաստ, նա չարիք է։ Սակայն երբ գործը վերաքննեցի, ես հասկացայ, որ պատասխանը դրական չէ, որ միայն իմ զգացումն է այդպէս արտայայտել այն։ Բայց լրջօրէն արտայայտուած պատասխանը, ինչպէս որ նա արտայայտուած է և՛ բրամինների, և՛ Սողոմոնի, և՛ Շոպէնհաուէրի կողմից, դա՝ միմիայն անորոշ պատասխան է, կամ նոյնութիւն.—O-ն հաւասար է O-ի, կեանքը

*ոչնչութիւն է։ Ըստ այդմ՝ փիլիսոփայական գիտութիւնը ոչինչ չէ ժխտում, այլ միայն պատասխանում է, որ այդ հարցը նա ինքը չէ կարող լուծել, որ լուծումը նրա համար մնում է անորոշ։*

*Ըմբռնելով այդ, ես հասկացայ և այն, որ իմ հարցին անհնարին է պատասխան որոնել բանական գիտութեան մէջ և որ՝ բանական գիտութեան տուած պատասխանը միայն մի ցուցումն է այն բանի վրայ, որ պատասխան կարող է ստացուել բացառապէս այն դէպքում, երբ հարցը այլ կերպ դրուի, երբ դատողութեան մէջ կը ներմուծուի նաև վախճանականի և անվախճանականի յարաբերականութեան խնդիրը։ Ես ըմբռնեցի այն ևս, որ որքան էլ հաւատքի տուած պատասխանները լինեն անիմաստ և այլանդակ, նրանք այն առաւելութիւնն ունեն, որ իւրաքանչիւր պատասխանի մէջ մտցնում են վախճանականի և անվախճանականի յարաբերականութիւնը, առանց որի պատասխան չէ կարող լինել։*

*Ինչ ձևով էլ որ ես դնեմ այս հարցը՝ «ինչպէս ապրեմ»,— պատասխանը կը լինի՝ Աստուծու օրէնքով։ Իրական ինչ դուրս կը գայ իմ կեանքից։ Յաւիտենական տառապանքներ կամ յաւիտենական երանութիւն։ Ո՛րպիսի իմաստ, որին մահը չոչընչացնի։ Միութիւն անվախճան Աստուծու հետ, արքայութիւն։*

*Այնպէս որ, բացի բանական գիտութիւնից, որը ինձ համար միակն էր հանդիսանում, ես անխուսափելի կերպով բերուած էի այն մտքին, որ ապրող համայն մարդկութիւնը ունի ինչ-որ մի այլ՝ բանականութիւնից զուրկ գիտութիւն ես — ապրելու հաւատք, հնարաւորութիւն տուող։*

*Հաւատքի ամբողջ անիմաստութիւնը ինձ համար միևնոյնն էր մնում, ինչպէս և առաջ, սակայն ես անկարող էի չընդունել այն, որ նա միայն մարդկութեանը տալիս է կեանքի հարցերի պատասխանները և, հետևաբար, ապրելու հնարաւորութիւն։*

*Բանական գիտութիւնը ինձ հասցրեց այն համոզման, որ կեանքը անիմաստութիւն է. և իմ կեանքը կանգ առաւ և ես կամենում էի ոչնչացնել ինձ։ Դարձնելով հայեացքս մարդկանց վրայ, ամբողջ մարդկութեան վրայ, ես տեսայ, որ մարդիկ ապրում են և պնդում, թէ իրանք գիտեն կեանքի իմաստը։ Նայեցի ինձ վրայ. ես ապրում էի, քանի գիտէի կեանքի իմաստը։ Ինչպէս ուրիշ մարդկանց, այնպէս էլ ինձ՝ կեանքի իմաստ և կեանքի հնարաւորութիւն տալիս էր հաւատքը։*

*Ապա նայելով այլ երկիրների մարդկանց վրայ, թէ ինձ*

*ժամանակակից և թէ վաղուց ապրողների, ես տեսայ միևնոյնը։ Ուր կեանքն է, այնտեղ է և հաւատքը, սկսած այն օրից, երբ գոյութիւն է ստացել մարդկութիւնը, որ և տալիս է հնարաւորութիւն ապրելու, ըստ որում հաւատքի գլխաւոր գծերը ամենուրեք և միշտ միևնոյնն են։*

*Ինչպիսի պատասխաններ էլ տայ որևէ մէկին որևէ հաւատք, հաւատքի իւրաքանչիւր պատասխան մարդու վախճանական գոյութեանը տալիս է անվախճանական իմաստ, մի իմաստ, որ չէ ոչնչանում տառապանքներով, զրկանքներով ու մահուամբ։ Հետևաբար՝ միմիայն հաւատքի մէջ հնարաւոր է գտնել կեանքի իմաստ և հնարաւորութիւն։ Ի՞նչ բան է այդ հաւատքը։ Եւ ես հասկացայ, որ հաւատքը աներևոյթ իրերի յայտնագործութիւն չէ միայն և այլն, յայտնութիւն չէ (դա միայն հաւատքի նշաններից մէկի նկարագրութիւնն է), մարդու առ Աստուած վերաբերմունքը չէ (անհրաժեշտ է որոշել հաւատքը, ապա Աստուծուն, և ոչ թէ Աստուծու միջոցով որոշել հաւատքը), համաձայնութիւն չէ միայն այն բանի հետ, ինչպէս ասել են մարդուն և ինչպէս յաճախ հասկացվում է հաւատքը,—հաւատքը մարդկային կեանքի իմաստի գիտութիւնն է, որի հիման վրայ մարդը չէ ոչնչացնում ինքն իրան, այլ ապրում է։ Հաւատքը կեանքի զօրութիւնն է։ Եթէ մարդ ապրում է, նա անպայման որևէ բանի հաւատում է։ Եթէ նա չհաւատար, որ անհրաժեշտ է որևէ բանի համար ապրել, նա չէր ապրի։ Եթէ նա չէ նկատում և չէ ըմբռնում վախճանականի խաբուսիկ էութիւնը՝ նա հաւատում է վախճանականութեանը, եթէ նա ըմբռնում է վախճանականի խաբուսիկ լինելը՝ նա պէտք է հաւատայ անվախճանականութեանը։ Առանց հաւատքի ապրել չէ կարելի։*

*Եւ ես յիշեցի իմ ներքին աշխատանքի ամբողջ ընթացքը և սարսափեցի։ Այժմ ինձ համար պարզ էր․ որպէս զի մարդ կարողանայ ապրել, նրան հարկաւոր է կամ չտեսնել անվախճանականը, կամ ունենալ կեանքի իմաստի այնպիսի բացատրութիւն, որով վախճանականը հաւասարուէր անվախճանականին։ Այդօրինակ բացատրութիւն ես ունէի, սակայն այդպիսին ինձ հարկաւոր չէր, քանի ես հաւատում էի վախճանականին, և ես սկսեցի բանականութեամբ վերստուգել այն։ Եւ բանականութեան լոյսի առջև նախկին ամբողջ բացատրութիւնը յօդս ցնդեց․ սակայն հասաւ ժամանակը, երբ ես դադարեցի հաւատալ վախճանականին։ Եւ այն ժամանակ ես սկսեցի իմ գիտութեան պաշարով բնական հիմունքների վրայ կառու-*

ցանել այնպիսի մի բացատրութիւն, որը կեանքին հաղորդէր մի իմաստ. բայց ոչ մի բան չկառուցուեց։ Մարդկային լուսագոյն ուղեղների հետ ես եկայ այն մտքին, թէ 0-ն հաւասար է 0-ի, և չափազանց զարմացայ, որ այդօրինակ մի վճիռ ստացայ, մինչդեռ ոչինչ այլ իսկապէս չէր էլ կարող դուրս գալ։

Ի՞նչ էի անում ես, երբ փորձնական գիտութիւնների մէջ պատասխան էի որոնում։ Ես կամենում էի իմանալ, թէ ինչո՞ւ եմ ապրում, և դրա համար հէնց ուսումնասիրում էի այն ամենը, ինչ որ ինձանից դուրս էր։ Պարզ է, որ ես պիտի շատ բան իմանայի, սակայն ոչինչ այն ամենից, ինչ որ ինձ կարևոր էր։

Ի՞նչ էի անում ես, երբ պատասխանը որոնում էի փիլիսոփայական գիտութիւնների մէջ։ Ես ուսումնասիրում էի այն արարածների մտքերը, որոնք ինձ պէս գտնուել են միևնոյն կացութեան մէջ, որոնք չեն ունեցել պատասխան այն հարցին, թէ՝ ինչո՞ւ եմ ապրում։ Պարզ է, որ ես ուրիշ ոչինչ չէի կարող իմանալ, բացի այն, որ ես գիտէի, այն է՝ ոչինչ իմանալ չէ կարելի։

Ի՞նչ բան եմ ես։ Անվախճանի մասը։ Չէ՞ որ հէնց այս երկու բառերի մէջ է ամփոփվում ամբողջ խնդիրը։

Մի՞թէ այս հարցը միմիայն երէկ է ստեղծել մարդկութիւնը։ Մի՞թէ ոչ ոք ինձանից առաջ չէ դրել այդ հարցը, մի հասարակ հարց, որ իւրաքանչիւր խելացի մանկան լեզուի ծայրին էլ է յատուկ։

Չէ՞ որ այդ հարցը դրուած է մարդկութեան գոյութեան առաջին օրից. և նրա գոյութեան առաջին օրից՝ հասկանալի է, որ այդ հարցի լուծման համար անբաւարար է ինչպէս վախճանականը վախճանականին հաւասարելը, այնպէս էլ անվախճանականը անվախճանականին. և այն օրից, երբ մարդիկ սկսել են գոյութիւն ունենալ, գտնուած են վախճանականի և անվախճանականի յարաբերականութիւնները և արտայայտուած։

Բոլոր այն գաղափարները, որոնցով հաւասարեցվում է վախճանականը անվախճանականի հետ և ստացվում կեանքի իմաստ, Աստուծու ազատութեան, բարութեան գաղափարները, որանց մենք ենթարկում ենք տրամաբանական հետախուզութեան։ Եւ այդ գաղափարները չեն դիմանում բանականութեան քննադատութեանը։

Եթէ այնքան սարսափելի չլինէր, կը լինէր ծիծաղելի, թէ ինչպէս մենք պարծանքով ու ինքնահաւանութեամբ երեխաների պէս քանդում ենք ժամացոյցը, հանում նրա զսպանակը, շինում նրանից խաղալիք և ապա զարմանում, որ ժամացոյցը կանգնել է։

Անհրաժեշտ է և թանգարժէք վախճանականի և անվախճանի հակասութեան լուծումն ու կեանքի հարցի այնպիսի պատասխանը, որով հնարաւոր համարվէր կեանքի գոյութիւնը։ Եւ դա միակ լուծումն է, որը մենք գտնում ենք ամենուրեք, միշտ և բոլոր ազգերի մէջ, մի լուծումն, որ դուրս է բերուած ժամանակից, որի մէջ կորչում է մեզ համար մարդկանց կեանքը, և այդ լուծումը այնքան ծանր է, որ մենք դրա նման ոչինչ անել չենք կարող,—հէնց այդ լուծումը մենք կործանում ենք թեթևամտօրէն այն նպատակով, որպէս զի կրկին դնենք միևնոյն հարցը, որը յատուկ է իւրաքանչիւրին և որի համար մենք պատասխան չունենք։

Աստուծու անվախճանականութեան գաղափարը, հոգու աստուածայնութեան, մարդկային գործերի կապակցութեան՝ Աստուծու հետ, հոգու միութեան և էութեան գաղափարները, բարոյական բարու և չարի մարդկային գաղափարը — դրանք գաղափարներ են, որոնք մշակուած են անվախճանականութեան մէջ թագնուած մարդկային մտքում, այն գաղափարները, առանց որոնց չէր լինի կեանքը և ես ինքս, իսկ ես, մերժելով համայն մարդկութեան այդ ամբողջ աշխատանքը, ուզում եմ ինքս մենակ այդ ամենը դարձնել ըստ իմ ուզած նոր ձևի։

Այն ժամանակ ես այնպէս չէի մտածում, բայց այդ մըտքերի սաղմը իմ մէջ կար արդէն։ Ես՝ նախ՝ հասկանում էի, որ իմ դրութիւնը Շօպէնհաուէրի և Սողոմոնի հետ միասին՝ չնայած մեր իմաստութեանը՝ անմիտ է. մենք հասկանում ենք, որ կեանքը չարիք է, և այնուամենայնիւ ապրում ենք։ Դա պարզապէս յիմար դրութիւն է, որովհետև եթէ կեանքը յիմար է,— իսկ ես այնքան սիրում եմ բանականութիւնը,—ապա ուրեմն անհրաժեշտ է կեանքը ոչնչացնել, որով և նրան ժխտող այլ ես չի լինի։ Երկրորդ՝ ես հասկանում էի, որ մեր բոլոր դատողութիւնները պտտվում են կախարդուած շրջանակի մէջ ինչպէս մի անիւ, որ չէ դիպչում միւս անիւի ատամներին։ Որքան էլ և ինչպէս էլ լաւ դատողութիւն ունենանք, այնուամենայնիւ մենք չենք կարող հարցին պատասխան ստանալ, և միշտ 0-ն հաւասար կը լինի 0-ին, ուստի և, երևի, մեր ճանապարհը սխալ է։ Երրորդ՝ ես սկսում էի հասկանալ, որ հաւատի տուած պատասխանների մէջ պարփակվում է մարդկային ամենախորունկ իմաստութիւնը, և որ ես իրաւունք չունէի ժխտել նրանց՝ բանականութեան հիմունքներով, և որ միմիայն այս գլխաւոր պատասխանները տալիս են կեանքի հարցի պատասխանը։

(Կը շարունակուի) ՍՈՒՐԽԱԹԵԱՆ

# ՕՍՄԱՆԵԱՆ ՀԱՅԵՐԻ
# ԱԶԳԱՅԻՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ*)
# (1860—1910)

---

## ԳԼՈՒԽ ՔՍԱՆԵՐՈՐԴ

*Ազգային Սահմանադրութեան ծագումն և նրա նախընթաց շրջանը.—Հանգուցեալ գործիչներ Նիկ. Պալեան, Յակոբ Կրճիկեան և Նահ. Ռուսինեան. —«Ղալաթիոյ օջախ» կուսակցութիւնն և նրա գործունէութիւնը.—Մի քանի դիտողութիւններ Ազգ. Երեսփոխանական Ժողովի մասին.—«Ազգ. Սահմանադրութեան» թիւրքերէն բնագիրը։*

*Ազգային Սահմանադրութիւնը շատ բան պարտական է 1848-ի եւրոպական ազատագրական շարժման։ Այնտեղ մենք գտնում ենք այն բոլոր կարևոր տարրերն, որոնք սոյն շրջանի հիմնական սկզբունքներն էին կազմում, ինչպէս երեսփոխանական դրութիւն, հանրային կրթութեան և եկեղեցական գոյքի մատակարարութեան աշխարհականացում, ընտրուած վարիչ մարմինների համարատուութիւն, ժողովրդային հսկողութիւն, մի խօսքով կատարեալ ժողովրդապետական վարչական ձև։ Ինչպէս որ մինչև 1846 թ. գոյութիւն ունեցած վարչական դրութիւններն ազդուած են 1839 ի Գիւլխանէի խաթթը շէրիֆի և 1845 ի ֆէրմանի տրամադրած բարենորոգչական ձեռնարկութիւններից, այնպէս էլ այնուհետև ազգային գործերի կառավարութեան մէջ մտցրւած ժողովրդապետական (դէմօկրատական) յատկանիշը հետևանք էր այն բանի, որ 1857-ի ազգային կանոնադրութեան—որ ապա յանգեցաւ «Ազգ. Սահմանադրութեան»—յօրինողները տոգորուած էին 1848-ի ազատագրական շարժման սկզբունքներով, իսկ այս սկզբունքները Թիւրքիայում կարողացան մարմնանալ*

---

*) «Արօր» 1910 թ. № № 1, 2, 3, 4, 5, 6—7, 8—9—10, 12. և 1911 թ. № 1, 2—3.

շնորհիւ 1856-ի նշանաւոր խաթթը հիւմայունի։ Ամիրայական գերիշխանութեան ժամանակ, այն է՝ մինչև 1846 թ., ամիրաներից ով որ ամենից ազդեցիկ էր, նա էլ ներկայացնում էր իսկական ազգային վարչութիւնն իր անձի մէջ. միւս ամիրաները պարզապէս այս ինքնակոչ ազգապետի մոլորակներն էին։ Պատրիարքը բացարձակօրէն ենթարկուած էր հզօրագոյն ամիրային։ Ինչ դիրք, որ բռնէին ամիրաներն աշխարհական գործերի նկատմամբ, նոյն դիրքին համապատասխան ընթացք էին տանում նաև եկեղեցական գործերն, որոնց տնօրինումը պատրիարքից էր կախուած։ Եթէ կար մի պարագայ, որ երբեմն թուլացնում էր ամիրայական տիրապետութիւնն, այդ այն էր, որ շատ անգամ ամիրաները ներքին գժտութեամբ ջլատում էին իրանց ոյժը։ Այս պատահում էր այն ժամանակ, երբ սեղանաւոր ամիրաները հակառակորդ էին հանդիսանում վառօդապետ և ճարտարապետ ամիրաներին կամ ընդհակառակը։ «Էսնաֆի» (արհեստաւորաց դասակարգի) շարժման յաջողութեան քիչ չէ նպաստած ամիրայական այս ներքին հակառակութիւնը։ Այս շարժումից և հակառակութիւնից ծնաւ 1847-ի կանոնագրութիւնն, որ ազգային աշխարհական և հոգևոր գործերի կառավարութիւնը յանձնում էր Հոգևոր և Գերագոյն Ժողովներին, որոնք փոխվում էին 2 տարին մի անգամ։ Ամիրաներն այնուամենայնիւ դեռ պահել են իրանց գերակշիռ դիրքն առաջին Գերագոյն Ժողովներում, որ միայն աստիճանաբար է տեղի տուել վաճառականների և արհեստաւոր դասակարգի մղման առջև։ Վերջին, այսինքն 1858-ի Գերագոյն Ժողովի 20 անդամներից միայն 6-ը ամիրաներից էին (4 սեղանաւոր, 1 վառօդապետ և 1 ճարտարապետ), իսկ մնացած 14-ը ժողովրդից, այն է՝ 7 արհեստաւոր, 1 բժիշկ, 2 ոսկերիչ և 4 մանր վաճառական։

Հոգևոր և Գերագոյն Ժողովներն որևէ կանոնագրութիւն չունէին իրանց համար և յաճախ մեծ դժուարութեան էին հանդիպում իրանց հսկողութեան յանձնուած գործերը վարելու եղանակի մասին։ Այն ժամանակ այդ գործերը դառնում էին Պատրիարքարանի, Ազգային Հիւանդանոցի, Տնանկ Աղքատաց Սնդուկի և ուսումնարանների շուրջը։ Եւ երբ ձեռնարկուեց այդպիսի մի կանոնագրութիւն կազմելուն, անմիջապէս երևան եկաւ գաղափարների այն մեծ տարբերութիւնն, որ գոյութիւն ունէր հին կարգերի ներկայացուցիչների և նոր, եւրոպական ուսում ստացած, կամ ժամանակակից գաղափարներով ներշնչուած երիտասարդների միջև։ Առաջինները «խաւարեալ» էին և երկրորդները «լուսաւորեալ»։ Այս երկու խումբերը՝ մաքա-

*ուժի ամենից ծայրայեղ միջոցներն էին գործ դնում իրանց նպատակը յառաջ տանելու համար. եղբայրն եղբօր դէմ էր, հայրն որդու դէմ։ Գերդաստանը և նոյն իսկ եկեղեցին կռուի և փոխադարձ անարգանքի թատր էին դարձել։ Առաջին խումբի մէջ էին ամիրաները, իսկ երկրորդի մէջ ուսեալ դասակարգի հետ միասին կային նաև արհեստաւորներն և վաճառականները։ «Լուսաւորեալների» պետն էր համարվում բժ. Սէրվիչէն. «Լուսաւորեալների» կուսակցութեան մէջ էր նաև զմիւռնիացի այն խմբակն*), որ յետոյ այնչափ մեծ դեր պիտի խաղար Ազգ. Սահմանադրութեան մէջ։ Այս խիստ պայքարի մէջ յաղթութիւնը մնաց «լուսաւորեալներին», որոնցից էր կազմուած գլխաւորաբար՝ 1853-ի «Ուսումնական Խորհուրդն», որի անդամներն էլ պատրաստեցին 1857-ի «Ազգային Կանոնագիրն» և ապա 1860-ի «Ազգային Սահմանադրութիւնն»՝ ամիրայական կուսակցութեան ընդդիմութեան հակառակ։ Ըստ այսմ Հոգևոր և Գերագոյն Ժողովները փոխանցուկ մի դրութիւն էին ներկայացնում Ամիրայական և Սահմանադրական Իշխանութեանց միջև**)։*

*Օսմանեան հայոց ազգային ինքնավարութեան հիմնադիր և անձնուէր գործիչներից ոմանք արդէն հանգչում էին յաւիտենական քնով մեր պատմութեան այս Առաջին Շրջանը չաւարտած։ Դրանք են մասնաւորապէս Նիկողոս Պալեան, Յակոբ Կրճիկեան և Նահապետ Ռուսինեան։*

*Նիկողոս Պալեանն համարվում է Ազգ. Սահմանադրութեան «յղացողը»***), թէև անշուշտ ոչ այն ընդարձակ հիմքերի վրայ,*

---

**) Գր. Մարկոսեան, Սահակ Ապրօ և Մինաս Մինասեան։ Մարկոսեան, որ Մոսկվայում էր ուսում ստացել, յետոյ դարձաւ սահմանադրական առաջին Քաղաքական Ժողովի ատենապետը։ Ապրօ օսմ. բարձրաստիճան պաշտօնեայ էր և նոյնպէս գտնուած է Ազգ. Վարչութեան գլուխ։*

***) Թէ այս նախնական շրջանի և թէ բուն Ազգային Սահմանադրութեան մասին—անձուկ մտքով—մանրամասն տեղեկութիւններ կարելի է գտնել Արշակ Յ. Ալպօյաճեանի «Ազգային Սահմանադրութիւնը, իր ծագումը և կիրառութիւնը» վերնագրով ընդարձակ պատմութեանը մէջ (Ազգային Հիւանդանոցի Ընդ. Օրացոյց 1910-ի), որ բարեխղճօրէն կատարուած մասնագիտական ուսումնասիրութիւն է այս նիւթի մասին։*

****) Ռուսինեան 1870 նոյեմբ. 27-ի Ազգ. Ժողովի նիստում Յակոբ Պալեանի ազգ. երեսփոխանութիւնից հրաժարուելուն առթիւ արտասանած ճառում ասում է, թէ այս Յակոբի եղբայրն՝ այսինքն Նիկողոս Պալեանն է եղած, որ Սահմանադրութեան գաղափարը «յղացաւ» և «իւր ձեռօք գծագրեց ազգային կանոնագրութեան հիմնական սկզբանց հոյակապ յատակագիծը...։ Ազգը ասոր կը պարտի իր Սահմանադրութեան գոյութիւնը»։ Իր մի ուրիշ ճառում նոյն Ռուսինեան դարձեալ վկայում է, թէ «Սահմանադրութեան սկիզբը անուն մը կայ համեստօրէն պահվըտած՝—Նիկողոս Պալեան» (1874 հոկտ. 18)։*

ինչ որ էր 1860 ի մտցուածը։ Պալեանի այս գործունէութիւնն առանձին արժէք եւ ստանում է այն տեսակէտով, որ ինք իբրեւ հարուստ ամիրայի որդի սովորուած էր գաղտնի գործել նոյն իսկ իր հօր՝ արքունի ճարտարապետ Կարապետ ամիրայի հակառակ, որ բուռն կերպով ճգնում էր ամիրայական իշխանութիւնը կանգուն պահել ժողովրդապետական ձգտումների դէմ։ Նիկողոս Պալեան վախճանուեց 1858-ին, դեռ 32 տարեկան հասակում։

Յակոբ Կրճիկեան, իր ժամանակի ամենից զարգացած հայերից մէկն, որ պետական բարձր պաշտօնեայ էր, շատ մեծ արդիւնք է ունեցած ազգային և հասարակական գործերում, յատկապէս «Պատրիարքարանի գործերը բարեկարգելու աշխատութեան մէջ, որուն առաջին հիմնադիրը ըլլալու պատիւ կը պատկանի» նրան։ Յակոբ Կրճիկեանին այս գործում օգնել է մի «լուսաւորեալ» ամիրա՝ Մկրտիչ Ճէզայիրլեան*)։ Կրճիկեան՝ Գերագոյն Ժողովի ատենապետ է եղած. այնուհետեւ 6 տարի լօղօֆէթի տիտղոսով պատրիարքարանի գործերն է կառավարած**)։ Կրճիկեանն էր, որ բժ. Սէրվիչէնի հետ միասին, երկուսն էլ Պարիզում ուսում առած, նոր մտքերի և յառաջադէմ գաղափարների ռահվիրաներ հանդիսացան, որոնց արդիւնքն եղաւ նախ «Ազգային Կանոնագիրն» և ապա «Ազգ. Սահմանադրութիւնը»։ Նա վախճանուեց 1865-ին։

Նիկ. Պալեան և Յակ. Կրճիկեան արդէն գործում էին ասպարէզի վրայ, երբ 1851-ին նրանց միացաւ բժիշկ Նահապետ Ռուսինեան, որ, իր ժամանակ, Ազգ. Սահմանադրութեան ամենից եռանդուն գործիչն է եղած։ Ռուսինեան 11 տարի բնակուել էր Պարիզում և դեռ այնտեղ եղած միջոցին սերտ յարաբերութեան մէջ էր գտնվում Պոլսից եկած ուսանողների հետ։ Ռուսինեան ջերմ մասնակցութիւն է ունեցած 1860-ի Ազգ. Սահմանադրութեան ծրագիրը կազմելու մէջ։ Սահմանադրութեան հաստատումից մի քանի ամիս յետոյ Ռուսինեան յայտնի Ֆուադ փաշայի հետ, իբրեւ նրա անձնական բժիշկը, մեկնում է Բէյրութ և իր բացակայութեան ժամանակ էլ ընտրվում է Սահմանադրութեան նախ առաջին և ապա նաև երկրորդ Ուսումնական Խորհրդի անդամ։ Երբ մի տարի յետոյ նա Կ. Պոլիս

*) Ա. Ալպօյաճեան. «Ազգ. Հիւանդ. Օրացոյց 1910», էջ 230—231.

**) Լօղօֆէթ=ազգ. ատենադպիր էր նշանակում և իսկապէս պատրիարքի խորհրդականն էր աշխարհական գործերի համար։ Այս տիտղոսը յունական է և շարունակվում է գործածուել Կ. Պոլսի յոյն պատրիարքարանում։

դարձաւ, Ազգ. Սահմանադրութիւնն իր անդրանիկ ճգնաժամի մէջն էր, որպիսին նա այնուհետև քանիցս ունեցած է։ 1863-ի Սահմանադրութեան խմբագրութիւնը նոյնպէս Ռուսինեանի մասնակցութեամբ է կատարուած։ Նոյն տարին իսկ նա ընտրուեց Ազգ. Երեսփոխ. Ժողովի Բ. ատենապետ և ապա այնուհետև նա իր ամբողջ էութիւնը նուիրեց Սահմանադրութեան, որի գլխաւոր սիւնն է եղել մինչև իր մահը։ Նա նշանաւոր էր մանաւանդ իբրև Ազգ. Ժողովի «Ներքին Կանոնագրի» հեղինակ և այլ բազմաթիւ օրինագծերի նախաձեռնող։ Նա անընդհատ գործում էր կամ իբրև ատենապետ, կամ իբրև որևէ խորհրդի անդամ և կամ իբրև պարզ երեսփոխան։ 1876 հոկտեմբերի 15-ին նա վերջին անգամ ատենապետեց և մասնակցեց Ազգ. Ժողովին. Նոյն տարին Նոյեմբ. 29-ին 57 տարեկան հասակում նա կաթուածահար եղաւ։ Նրա անձնական արժանիքը մեծ դրուատիքի առիթ դարձաւ իր մահուան առթիւ խօսուած ճառերի մէջ։ Ներսէս Վարժապետեան իր դամբանականում Ազգային Ժողովի «Սողոնը» տիտղոսեց նրան, իսկ նրա սահմանադրական գործի գործակիցը, Գր. Օտեան, գրեց նրա տապանի վրայ՝ «զքեզ լամք անդադար»*)։

Պատմութեանս ընթացքում արդէն մի քանի դիտողութիւններ արած ենք Սահմանադրութեան ներքին արժէքի և նրա վարչական մարմինների ընթացքի նկատմամբ։ Այժմ հարկաւոր ենք համարում առանձնապէս խօսել օրէնսդիր մարմնի, այն է՝ Ազգ. Երեսփոխանական Ժողովի գործունէութեան մասին։

Ամբողջ այս Առաջին Շրջանում (1860—1877) Ազգային Ժողովը փոքր ի շատէ կազմակերպուած միայն մի կուսակցութիւն է ունեցած իր մէջ, այն՝ որ յայտնի է «Ղալաթիոյ օջախ» կոչումով։

«Ղալաթիոյ օջախ» կամ Թիւրքերէն ձևով «Ղալաթա օջաղը» կուսակցութիւնը՝ սահմանադրական օրէնքի և կարգերի անթերի պահպանման յարող մի խումբ երեսփոխաններից էր կազմուած, որոնք նպատակ ունէին ժողովրդի իրաւունքների պաշտպան հանդիսանալ և ընդդիմանալ Ազգ. Ժողովի այն երեսփոխաններին, որոնք ամիրայական իշխանութեան յիշատակներն էին պահպանում կամ ազնուապետական հովեր ունէին։ Բայց երկու երեսփոխան, որոնք իրանց բարձր դիրքի շնորհիւ ազնուապետական շրջանին էին պատկանում, այսինքն Գրիգոր

*) Նշանաւոր հայ բժիշկների յայտնի կենսագիրը դոկտ. Վ. Թորգոմեան՝ բժ. Նահապետ Ռուսինեանի վրայ մի հմտալից ընդարձակ ուսումնասիրութիւն է հրատարակած «Հանդէս Ամսօրեայում», 1902 և 1903 տ.։

Օտեան և բժշկապ. Սէրվիչէն, բարձր էին այդ կուսակցական պայքարից և վայելում էին «Ղալաթիոյ օջախի» յարգանքը։ Այս անունով կոչուելու պատճառն այն էր, որ Երեսփոխանական Ժողովը (մինչև 1877) գումարվում էր Ղալաթիոյ Խորհրդարանում և յիշեալ երեսփոխաններն այնտեղ կանխաւ հաւաքվում էին, քննում էին Ժողովի օրակարգն և հարցերը բաժանում էին իրանց միջի ատենախօսներին, նայելով թէ ով որ հարցն աւելի է ուսումնասիրած և աւելի ձեռնհաս է։ Կուսակցութեան գլխաւոր անդամներն և ատենախօսներն էին Մատթէոս վ. Իզմիրլեան, բժ. Նահապետ Ռուսինեան, Քրիստոստուր Ղազարոսեան, որոնց վրայ աւելացան յետոյ երկու պերճախօսներ ևս՝ Ստեփան Փափազեան և Օգսէն Խօճասարեան։ Կուսակցութիւնն իր ոյժը ցոյց տուաւ առաջին անգամ Խրիմեանի դէմ, երբ սա սկսեց Սահմանադրութեան օրէնքներից դուրս գործել։ Խրիմեանի հակասահմանադրական արարքի դէմ մաքառումը տեղի ունէր թէ Քաղաքական Ժողովում, որի ատենապետն էր Սենեքերիմ Մանուկեան, և թէ մայրաքաղաքի Թաղական Ժողովներում։ 1873-ի ամառը շատ մեծ կռիւներ պատահեցին այնտեղ, և միայն ոստիկանութեան միջամտութեան շնորհիւ արիւնհեղութեան առաջն առնուեց։ Պայքարը վերջ գտաւ նրանով, որ Խրիմեան հարկ տեսաւ զիջել և հեռացաւ պատրիարքական աթոռից։ Եւ թէև այս պատճառով Ժողովրդի մեծ մասը գրգռուած էր կուսակցութեան դէմ, բայց նրա ղեկավարները՝ Իզմիրլեան, Ղազարոսեան և Փափազեան՝ աննկուն շարունակեցին իրանց ընթացքը։

«Ղալաթիոյ օջախն» յառաջադիմական ուղղութիւն ունէր։ Հետաքրքրական է յիշել երկու դէպք՝ 1876-ին Ռուսինեան մի ծրագիր է առաջարկում, որ մեծ փոփոխութիւն էր մտցնում Սահմանադրութեան մէջ և նրան աւելի ևս ենթարկում էր Եկեղեցուն։ Պահպանողական-կրօնական ոգով կազմուած այս ծրագրին, որ անհատականապէս Ռուսինեանին էր պատկանում, կուսակցութիւնն ուժգին դիմադրեց և վերջ ի վերջոյ տապալեց, երկար ձգձգելուց յետոյ նրա քննութիւնը։ 1877-ին Օգսէն Խօճասարեան դաստիարակութեան խնդրի մասին ճառելիս առաջարկում է, որ Ղալաթիոյ Նորակառոյց միջնակարգ ուսումնարանն, որ ուղղակի Ուսումնական Խորհրդի հսկողութեան տակ պիտի գտնուէր, համազգային կնիք ունենայ. «Ճոն ընդունելու են,—պահանջում է նա,—բոլոր այն մանկունքն ու մարդիկը, որք Հայ անունը կը կրեն՝ բէեւ ըլլան բողոքական կամ կաթոլիկ*)»։

*) Ատենագր. Ազգ. Ժողովոյ, 11 մարտ 1877.

եւ Ղազարոսեան ու Փափազեան անմիջապէս ձայնակցում են նրան և պաշտպանում, թէև ծրագիրը մնում է ծրագիր։

«Ղալաթիոյ օջախն» ընդհանրապէս ընդդիմադիր խմբի դիրք է բռնած հանդէպ պատրիարքի և ազգ. վարչութեան, անողոք կերպով քննադատելով նրանց ընթացքը։ Ներսէս Վարժապետեան շատ էր նեղվում այս վիճակից և շարունակ յորդորում էր «սիրով և միաբանութեամբ գործել», միմեանց դէմ չկռուել և վերջապէս «կուսակցութիւնները վանել» ժողովից։ Դրան պատասխանում են «Ղալաթիոյ օջախի» անդամները. Իգմիրլեան նկատում է. «Սէրը թագաւորելու համար արդարութիւնը պէտք է գործադրել. երբ արդարութեան գործադրութիւն չըլլայ, սէրը չի կրնար թագաւորել»։ Իսկ Խօճասարեան բացարձակօրէն յայտնում է. «Չէ թէ չենք կրնար վանել, այլ չպիտի վանենք կուսակցութիւնները»։ «Ղալաթիոյ օջախը» միևնոյն ժամանակ, իբրև հաշուական հարցերում ուղղամիտ, խիստ հակառակ էր նաև Երուսաղէմի Աթոռին և Միաբանութեան, այնտեղ տիրող հաշուական անկարգութիւնների և կենտրոնի հեղինակութեան նկատմամբ ցոյց տրուած ըմբոստութեան պատճառով։

«Ղալաթիոյ օջախի» անդամների աջ ու ձախ, երբեմն անզգոյշ և անիրաւ, բայց շատ անգամ արդարացի և միշտ բուռն ու կտրուկ քննադատութիւնները՝ մեծ թշնամութիւն էին յարուցանում նրանց դէմ, որի պատճառով յաճախ վիրաւորանքի են ենթարկուել նրանք զանազան կողմերից։ Բայց մի անգամ նրանց դէմ թշնամական զգացմունքն այնքան սուր կերպարանք ստացաւ, որ նրանք մատնուեցին թիւրք կառավարութեան և քիչ էր մնում, որ այս պատճառով սաստիկ պատժուէին։ Այս հալածանք յարուցանողը պատրիարքական փոխանորդ Մկրեան տէր Յովհաննէս քահանան էր, որ Խառն Ժողովին տուած բողոքագրով դատ էր պահանջում այդ երեսփոխանների դէմ, «որոց գործն եղած է,—ասում էր նա,—միշտ պատրիարքներ և ժողովներ տապալել և հանդարտ ու խաղաղ ազգը երկպառակութեան և խռովութեան մէջ ալեկոծել»։ Այս բողոքագիրը՝ թէև Խառն Ժողովից մերժուած՝ նա տպում է Իւթիւճեանի «Մասիս» և Փանոսեանի «Մանզումէի էֆքեար» լրագիրներում։ Գանգատի առարկայ էին յատկապէս Ստեփան Փափազեան, Քրիստ. Ղազարոսեան և Օգսէն Խօճասարեան։ Կ. Պոլիսն այդ միջոցին պատերազմի պատճառով պաշարման դրութեան մէջ էր։ «Օջախի» հակառակորդներն իրանց թերթերում («Լրագիր») խիստ կերպով նրանց վրայ յարձակուելուց յետոյ «իբրև պատրիարք ու

ժողովներ տապալող և ազգի հանդարտութիւնը խռովողների» վրայ՝ միևնոյն ժամանակ չէին քաշվում ակնարկներով մատնանշել, թէ նրանք, յիշեալ երեսփոխաններն, իբրև օսմանեան հպատակ ևս հաւատարմական զգացմունք չունէին և այլն։ Ոստիկանութեան մինիստրը բացատրութիւններ է պահանջում Մկրեանից և ամբաստանուած երեսփոխաններից և որոշում է սրանց երեքին էլ աքսորել։ Ամբողջ 2 ամիս այս հարցն աւելի էր հետաքրքրում պատրիարքական շրջաններին, քան թէ պատերազմական դէպքերը։ Ներսէս պատրիարք միջամտեց և նրանց ազատեց աքսորից, բայց միևնոյն ժամանակ ազդու կերպով յորդորեց, որ Ազգ. Ժողովի նիստերին չյաճախեն...։ Այն ժամանակ Իզմիրլեան ամեն ջանք գործ է դնում իր կուսակիցներին ազատելու և Ազգային Ժողովի 1877 հոկտեմբ. 28-ի նիստում 46 երեսփոխանի ստորագրութեամբ մի առաջարկութիւն է ներկայացնում պատրիարքին, իբրև Ազգ. Երեսփոխ. Ժողովի նախագահին, որ նա միջնորդէ կառավարութեան առջև, քանի որ, ասուած է այնտեղ, «մինչև իսկ աքսորման վտանգի սպառնալեօք անոնց հրաժարականը կուզուի իրենց երեսփոխանութենէն և նկատելով, որ մեր վերոյիշեալ պաշտօնակիցները զրպարտութեամբ մատնուած են»։ Այս առթիւ Ընդհ. Ժողովի ատենապետ Նուրեան յայտարարում է իր նախագահական աթոռից, որ ոչ թէ միայն պատրիարքն, այլ նոյն իսկ սադրազամն իրաւունք չունի ազգային երեսփոխանին իր պաշտօնից հրաժարեցնել։ «Ղալաթիոյ օջախն» յաղթանակեց մի անգամ ևս, և արգելուած երեսփոխանները յետագայ նստին եկան գրաւեցին իրանց աթոռները։

Այժմ մի քանի դիտողութիւններ էլ Ազգ. Երեսփ. Ժողովի գործունէութեան մասին։

Ըստ Սահմանադրութեան՝ Ազգային Ժողովը պիտի գումարուէր երկու տարին մի անգամ ապրիլի վերջերն և պիտի տևէր «մինչև երկու ամիս» (յօդ. 61)։ Արտաքոյ կարգի դէպքերում արտակարգ նիստ կարելի էր հրաւիրել. «միայն թէ այս կերպ արտաքոյ կարգի ժողով գումարելէն առաջ՝ գումարման պատճառը Բ. Դրան իմաց տրուելով անոր հաճութիւնը առնուլ հարկ է» (յօդ. 62)։ Այս վերջին կէտն, որ ապագային Աբդուլ Համիդի ձեռքում օրինական մեծ զէնք պիտի լինէր նոյն իսկ սովորական նիստերն արգելելու համար, լռելեայն անուշադրութեան էր մատնուած և Երեսփ. Ժողովի նիստերը գումարվում էին գրեթէ անընդհատ, ամբողջ տարին։ Նիստերը մեծ մասամբ տեղի ունէին ուրբաթ օրերն, որ մահմեդական

տօնի օր լինելով՝ կառավարութեան հայ պաշտօնեաների համար աւելի յարմար էր իրանց երեսփոխանական «ազգասիրական» պարտականութիւնը կատարել։ Բայց այս յաճախակի նիստերն այն անյարմարութիւնն էլ ունէին, որ շատերն, որոնք իսկապէս կարող էին օգտակար լինել, ժամանակի սղութեան պատճառով յանձն չէին առնում երեսփոխանական պաշտօն ընդունել կամ եթէ ընդունում էին՝ զանց էին առնում կանոնաւորապէս յաճախել։

Ազգային Ժողովի պարապմունքի արդիւնաւէտութեան մեծապէս վնասել է ինքն ըստ ինքեան աննշան մի հանգամանք, այն է՝ որ նա հնարաւորութիւն չունէր գիշերները նիստ անել, կամ ցերեկն սկսուած նիստը շարունակել գիշերն ես, որպէսզի վերջ տրուէր յարուցուած հարցերին։ Դրա պատճառն այն էր, որ Կ. Պօլսում, ինչպէս դեռ հիմա էլ, արևի մուտքից յետոյ լայնածաւալ քաղաքի զանազան թաղերի միջև երթևեկութիւնը դադարում է, որովհետև գիշերային հաղորդակցութիւնը կամ անկարելի է և կամ չափազանց դժուար է և թանգ։ Այս պատճառով էլ յաճախ պատահում էր, որ ատենապետից սկսած մինչև քարտուղարն և երեսփոխանները նիստի ժամանակ ուշադրութեամբ հետևում էին ժամացոյցի սլաքին, որ «շոգենաւը չփախցնեն», տուն դառնալու ժամանակը չանցնի, այլապէս գիշեր ատեն հնար չունէին իրանց բնակարանն երթալու։ Շատ անգամ, երբ նիստը քիչ երկարում էր, նրանք ամեն ինչ կիսատ էին թողնում և փակում նիստը։ Մի ամիս յետոյ կայացած հետևեալ նիստում շատ կէտ նորից էր յուզվում, նորից կրկնվում, և այդպէս անհագին ժամանակ էր կորչում ի զուր։

Ազգ. Ժողովի նիստերին յաճախում էին ընդհանրապէս այն երեսփոխաններն, որոնք խօսելու փափագ և ընդունակութիւն ունէին. Նրանք սովորաբար ամեն խնդրի մասին անպատճառ ուզում էին խօսել իրանց իսկական կամ կարծեցեալ հմտութիւնը ցոյց տալու համար և նեղանում էին, որ ատենապետներն երբեմն ձանձրացած՝ վիճաբանութիւնները փակելու որոշում էին առաջարկում։ Դրանից հարցերը չափազանց ձըգձգվում էին։

Ազգ. Ժողովն որոշ օր կամ նիստ չունէր հարցապնդումների համար, որով շատ անգամ աննշան խնդիրներ հարցումի և հարցապնդումի ձևով վիճաբանութեան առարկայ էին դառնում և ամբողջ նիստեր էին գրաւում, մանաւանդ երբ կրքերն յուզուած էին անձնական նկատումներով, իսկ այդ ժամանակ

օրակարգի վրայ գտնուած լուրջ խնդիրներ ինչպէս բիւջէն, դաստիարակութեան խնդիրը, Սահմանադրութեան վերաքննութիւնն և այլն անվերջ կերպով մնում էին առանց քննութեան և լուծման։

Մեր յառաջ բերած այս մի քանի պատճառներն, ի մէջ այլոց, մեծ դեր են խաղացած Ազգ. Ժողովի գործնական աշխատութեան պակասութեան մէջ։

Ազգ. Սահմանադրութեան (1863 թ.) թիւրքերէն թարգմանութիւնն, որ օսմանեան կառավարութեան համար բնագրի ոյժ ունի, հրատարակուած է Օսմ. Քաղաքացիական Օրէնքի մէջ և նրա մասն է կազմում*)։ Բայց ուշադրութեան արժանի է, որ հայերէն և թիւրքերէն օրինակները—երկուսն էլ պաշտօնական—մի քանի կարեւոր կէտերում տարբերվում են միմեանցից։ Նշանակենք գլխաւորները։ Նախ՝ բուն անունը։ Հայերէնն ասում է մեծահնչիւն կերպով—«Ազգային Սահմանադրութիւն Հայոց», իսկ թիւրքերէնը պարզապէս Կանոնադրութիւն (Նիզամնամէի միլլէթի էրմէնիան)։ Հայերէնի մէջ ասուած է «Ազգային Երեսփոխան», իսկ թիւրքերէնը փոխանակ նրա համապատասխան «մէբուս»**) բառը գործածելու «միլլէթ վէքիլի» (ազգի փոխանորդ) կամ «մէջլիսի ումումի ազասը» (Ընդհանուր Ժողովի անդամներ) բացատրութիւնն է գործածում, որ շատ տրամաբանական է, քանի որ միայն հայերէն օրինակն ունի «սահմանադրութիւն» և յարակից կոչումներ, իսկ թիւրքերէն օրինակն՝ ոչ։ Միւս տարբերութիւններն այնքան էական չեն։

ՍԱՐՈՒԽԱՆ

ՎԵՐՋ Ա. ՄԱՍԻ

---

*) Դիւստուրի Բ. հատոր, որտեղից թարգմանուած է նաև ֆրանսերէնի—(Georges Young, «Corps de Droit Ottoman» II vol., 79—92).

**) Այս մէբուս (երեսփոխան) բառի վրայ Ազգային Ժողովն իր 1877 թ. օգոստ. 19-ի նիստում յատկապէս վիճում է, բայց որոշում է կայացնում չգործածել պաշտօնական թղթերում։

# ԳԱԲՐԻԷԼ ՔԱՀԱՆԱՅ ՊԱՏԿԱՆԵԱՆԻ ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆԸ*)

(1802—1882)

---

## Ա.

### *Ծագումն տէր-Գաբրիէլի*

Տէր-Գաբրիէլ մագիստրոս աւագ-քահանայն Պատկանեան ծնաւ ի Տփխիս 1802 փետր. 26, մինչդեռ նոր էր վրաց թագաւորութիւնն վերացել, և նոցա մայրաքաղաքի մէջ ծածանում էին ռուսաց երկգլխեան արծուեկիր դրօշակներն։ Ինչպէս Ալէքսանդր Ա. կայսեր թագաւորութեան երկրորդ ամն էր, նոյնպէս և Ֆրանսիոյ հասարակապետութեան առաջին հիւպատոսի՝ Նապոլէոն Բոնապարտի միահեծան իշխանապետութեան երկրորդ տարին էր։ Ոչ միայն Ռուսաստան, այլ և բոլոր Եւրոպա սուր ի ձեռին հաշտութիւն էին խոստանում ու յաղթութիւն էին որոնում։

Այս միջոց հայոց ազգն ունէր երկու ազգամիջեան խռովութիւն։ Դանիէլ և Դաւիթ կաթողիկոսունք վիճաբանութիւն ունէին հայրապետական աթոռոյ ժառանգութեան աղագաւ։ Եփրեմ և Գրիգոր արքեպիսկոպոսունք վէճ ունէին Ռուսաստանի առաջնորդութեան պատճառաւ։ Վասն որոյ այս տարաձայ-

---

*) Գաբրիէլ աւագ քահանայ Պատկանեանի մահից յետոյ նրա թղթերի մէջ գտնուել է ներկայ ինքնակենսագրութիւնը, որ հանգուցեալի որդին դրել է պ. Յ. Սպենդիարեանի տրամադրութեան ներքոյ։ Ծանօթանալով այդ աշխատութեան բովանդակութեան հետ և տեսնելով որ նա պարունակում է հետաքրքրական նիւթեր ազգային պատմութեան համար 80-ամեայ մի շրջանի մէջ. «Արօրի» խմբագրութիւնը խնդրեց պ. Յ. Սպենդիարեանին յանձնել իրան տպագրութեան համար «Արօրի» մէջ, մաս մաս։ Այս առաջարկը հաճոյքով ընդունուեց պ. Սպենդիարեանի կողմից։

նութիւնն հայոց ազգային միութիւնն համարեա ի չորս մասունս էր պատառել. ոմանք էին դանիէլեան, ոմանք՝ դաւթեան, ոմանք՝ եփրեմեան և ոմանք՝ գրիգորեան։ Այլ թէ ազգային այս խռովութիւնք ուստի էին ծագել և ինչ յարակցութիւն ունէին տէր-Գաբրիէլ Պատկանեանի ծագման հետ, ահա այս է ստոյգ պատմութիւնն։

Սրբազան Յակոբ պատրիարք Նալեան արքեպիսկոպոսի գաւազանի ներքոյ ծաղկել էր հարիւրն մէկ ու միով յառաջ քան զայն ոմն տէր-Գաբրիէլ աւագ-քահանայ Պատկանեան (Մինասիբ-զադէ), որ էր իւր ազգատոհմի մէջ հինգերորդ տէր-Գաբրիէլ՝ յայտնի տոհմական աւանդութեամբ, որոյ որդին տիրացու-Փոկաս՝ իւր հօր տէր-Գաբրիէլի միջնորդութեամբ ձեռնադրեալ Զաքարիա պատրիարքէն եղև տէր-Պետրոս աւագ քահանայ Պատկանեան, որոյ էին որդիք Սերոբէ, Յակոբ, Քերոբէ, Միքայէլ և այլք։ Ի սոցանէ Միքայէլ, որ Ռեստէն ևս կոչեցաւ, էր երբեմն բժշկապետ Ալի փաշա փոխարքային Եգիպտոսի։ Քերոբէն յետ ժամանակաց ի 1817 ամի ձեռնադրեալ կոչեցաւ տէր-Գաբրիէլ քահանայ Պատկանեան վեցերորդ և քահանայագործէր յՕր-Բազար քաղաքի Տաւրիկ նահանգի։ Իսկ Սերոբէն ուսանէր ի դպրոցի Թագւոր վարժապետի ի Պոլիս։ Զմիւռնացի աղա Մարգար Զաքարիա Խոջեանց (որ թաղեալ է ի Ս. Պետերբուրգ), գոլով խոստովանորդի տէր-Գաբրիէլ աւագ-քահանայի Պատկանեան, տեսեալ զմանուկն Սերոբէ, յանձն էառ առաքել զնա ի Վենետիկ, որ ուսումն առնու ի վանս Ս. Ղազարու։ Մինչդեռ այս խորհրդոյ մէջն էին, Ղուկաս կաթողիկոսի կոնդակն ի ձեռին ածաւ ի Պոլիս մանուկ մի աշտարակեցի՝ Ներսէս Տէր-Յարութիւնեան Շահազիզեանց՝ կամսարական՝ առ Գրիգոր պատրիարքն, որ ուսումն ստանայ Թագւոր վարժապետից։ Աղա Մարգարն տեսաւ այս պատանին ևս, որ միայն երկու ամօք երէց էր քան զՍերոբէ Պատկանեանն, կամեցաւ զնա ևս առաքել ի Վենետիկ. այլ յորժամ հարցուցին Գրիգոր պատրիարքին, պատրիարքն ցոյց տուեց Ղուկաս կաթողիկոսի կոնդակն, որոյ մէջ սաստիկ զգուշացուցանէր ջանալ ըստ ամենայնի, որ Ներսէս պատանին չխմորուի ունիթոռաց ուսմամբ. այս պատճառաւ 1782 թուին Սերոբէն գնաց Վենետիկ, իսկ Ներսէս մնաց Պոլիս։ Այն օրէն էր սկսել Ներսէսի և Սերոբէի մէջ սերտ և մտերիմ բարեկամութիւն։

Ներսէս զկնի երկուց կամ երից ամաց դարձաւ յէջմիածին և ձեռնադրեցաւ սարկաւագ, յետոյ աբեղայ և ապա վարդապետ

և եղև գրագիր Ղուկաս կաթողիկոսի։ Իսկ Սերոբէն ի 1792 դարձաւ Թրեստից ի Պոլիս և՝ կամաւ տէր-Գաբրիէլ պապուն իւրոյ՝ ամուսնացաւ և՝ հանդիպեալ փորձութեանց՝ ստիպեցաւ փախստեամբ գալ ի Տփխիս, ուր և եհաս ի 1794 ամի, ուր և եկն եղբայր նորա Քերոբէն և եբեր լուր՝ թէ կին նորա վախճանեալ է։ Սերոբէ շնորհս գտեալ առ Հերակլի արքայի վրաց՝ յանձնեցաւ պաշտպանութեան Գաբրիէլ մայրորի հրազինապետի թագաւորութեան վրաց, և ամուսնացաւ դստեր եղբօր նորա հանգուցեալ Միքայէլ ոսկերչի արքունական դրան, ի տանէ Կալեկեան Պապի, օրիորդին Մարիամայ, որոյ մայրն Թամար էր քաջավարժ վիրաբուժ և ոսկերաբուժ, վասն որոյ և միշտ մուտ ունէր ի դարպասն արքունական։

Յամուսնութենէ աստի ծնան ի 1799 ամի Գէորգ որդին, ի 1802 փետր. 26՝ Գաբրիէլ, ի 1804՝ Պետրոս։

Գէորգ յետ ժամանակաց եմուտ ի պաշտօն զինուորական, և ապա ի քաղաքական, և եղև ի 1824 ամի օգնական ոստիկանի Հին-Նախիջևան քաղաքի, և ի 1855 ամի անդ մեռաւ և անդ թաղեցաւ։

Պետրոս՝ ամուսնացաւ դստեր Ալամդարեան Յարութիւն վարդապետի, և ձեռնադրեցաւ ի Սերոբէ արքեպիսկոպոսէ քահանայ Ստաւրապօլ քաղաքի, և եղև տէր-Պետրոս աւագ-քահանայ Պատկանեան ի 1834 ամի և ի 1873 ամի ի դեկտ. վախճանեալ թաղեցաւ ի Ստաւրապօլ, թողեալ յիշատակ իւր զանդրանիկն իւր զՔերոբէ գիտնական վարժապետն համալսարանին Ս. Պետերբուրգ մայրաքաղաքի։

Չորրորդ որդի Սերոբէ վարժապետ Պատկանեանի՝ որ ծընաւ յԱստրախան՝ Միքայէլ անուն, ի 1837 աւարտեալ զուսումն ի ճեմարանի Լազարեան ի Մոսկվա՝ տեղափոխեցաւ ի Տփխիս, և անդ ամուսնացաւ, և յառաջադէմ էր յարքունական քաղաքական պաշտօնի։

Միակ դուստրն Սերոբէի Պատկանեան Կատարինէ, որ ծընաւ ի Նոր-Նախիջևան ի 1801 ամի, որոյ ի մկրտութեան կնքահայր եղև Եփրեմ արքեպիսկոպոսն հրաւիրեալն արդէն ի կաթողիկոսութիւն, ի 1824 հարսնացաւ Ղազար Բալխանցի, որ ստացաւ զճոխ ժառանգութիւն ի Յոհաննէս Եգուլեանէ կնքահօրէ իւրմէ։

Իսկ Գաբրիէլ՝ որդին Սերոբէ վարժապետի Պատկանեան ծնեալ ի 1802, ի փետր. 26, մկրտեցաւ ի 28 փետր.։ Մկրտող քահանայն էր տէր-Գաբրիէլ Հեջուբեան, և կնքահայրն՝ Աբէլ Տէր-Առաքելեան Ղամազեան։

Բ.

## Ազգամիջեան վէճք

Ի վախճանիլ ազգասէր Սիմէօն կաթողիկոսի երեք էին արժանաւորք հայրապետական աթոռոյ. Զաքարիա պատրիարք, բասենցի Յարութիւն վարդապետ և Յոսէփ Արղութեան արքեպիսկոպոս, որ՝ յաւուրս պատրիարքութեան սրբազան արքեպիսկոպոսին Յակոբայ Նալեան՝ ընդ Սիմէօնի արքեպիսկոպոսի գընացեալ էր ի Պօլիս և ճանաչէր զտէր-Գաբրիէլ Պատկանեան աւագ-քահանայն, և ի ժառանգել Սիմէօնի զաթոռն հայրապետութեան՝ ձեռնադրեալ ի նմանէ արքեպիսկոպոսական իշխանութեամբ եկն յԱստրախան անուամբ առաջնորդի ռուսաստանեայց հայոց։ Յորժամ ընտրութեամբ միաբանութեան սըրբոյ Էջմիածնի յաթոռ հայրապետական բազմեցաւ Ղուկաս, Զաքարիա բարկացաւ և խափանեց ի Պօլիս զգործադրութիւն Տօնացուցին Սիմէօնի, բասենցի Յարութիւն արքեպիսկոպոս գնաց ի Թրեստ, և Յոսէփ հրաման եհան ի կայսերական դրանէ, զի առանց առանձին հրամանի առաջնորդին հայոց ռուսաստանեայց՝ հոգևորական ոք մի մտցէ ի հայազգեաց ի Ռուսաստան։ Յորժամ Ներսէս Աշտարակեցին դարձաւ ի Պօլսոյ յԷջմիածին՝ ի միասին ընդ պաշտօնի գրագրութեան ընկալաւ և զթշնամութիւնն որ առ Յոսէփ արքեպիսկոպոսն Արղութեան, որ որքան յառաջադէմ էր և սիրելի յաչս երևելեաց ռուսաց, այնքան ատելի հայրապետին և միաբանից Էջմիածնի, այլ ոչ ամենեցուն, զի բազումք էին կուսակիցք Յոսէփայ, յորոց սազի էր և Էնակէթեցին Դաւիթ արքեպիսկոպոսն, այր առիւծասիրտ և առիւծակերպ։ Յոսէփ ունէր մի վարդապետ Գրիգոր անուն Զաքարեան, աստրախանցի, տեղեակ լեզուին և օրինաց և կարգաց ռուսաց, վասն որոյ և պատուաւոր յաչս ազգին և ծանօթ մեծամեծաց տէրութեան, ի կարգի որոց էր և հայազգի աղա Յոհաննէս (Նազարեան) Լազարեան, որ օգնական էր Յոսէփայ՝ նորա բազմադիմի ազգասիրական գործոց մէջ. այլ Գրիգոր չէր փոյթ տանում հաճոյանալ նմա, վասն որոյ և չէր նմա սիրելի։ Ծայրագոյն պատճառ ցրտութեան սիրոյ Յոհաննէս Լազարեանի և Գրիգոր վարդապետի մէջ՝ էր այն, որ երբ խրիմեցի հայք գաղթեցին Թաթարաց երկրից դէպի Ռուսաստան առաջնորդութեամբ իւրեանց քահանայապետի՝ Պետրոս Մարկոսեան արքեպիսկոպոսի, այն գաղթական հայոց հազար և մի եկեղեցեաց

ճոխութիւնն յանձնուած էր իւրեանց առաջնորդին. այլ երբ առաջնորդն վախճանեցաւ Սամարի գետափում, և գաղթական երեք-հազար-վեց հարիւր գերդաստան ժողովուրդն կայսերական հրովարտակաւ Եկատարինիոյ Բ. Թագուհւոյն՝ յանձնեցաւ յառաջնորդութեան Յոսէփայ, Յոսէփ՝ սպասաւորութեամբ Գրիգոր վարդապետի տիրապետեց եկեղեցական ճոխութեան, ի միջոյ որոց, որպէս աւանդութիւնն է ասում, Գրիգոր վարդապետն սեփականեց գոհարեղէնն, և ումեք հաշիւ չտուեց։

Յոհաննէս Լազարեանն՝ զկնի շինութեան Նոր-Նախիջևան քաղաքի, մինչ սկսան Նոր-Նախիջևանցիք Յոսէփից պահանջել իւրեանց եկեղեցեաց ճոխութիւնն, սկսաւ Լազարեան Նախիջևանցւոց պաշտպան երևիլ և Գրիգոր վարդապետից հաշիւ խնդրել։ Այլ այս հաշուապահանջն տևեց 1780 թուէն մինչև ի 1795 թիւն, որ զանազան չարեաց շարժառիթ եղև և Նոր-Նախիջևանայ կործանման, գայթակղութեան վէճ դրուեցաւ, որովհետև Նախիջևան՝ որ Յոսէփայ ազգասիրութեան կաթող պիտի լինէր, այս հաշուապահանջից պատճառաւ Յոսէփայ աչքից ընկաւ, և Յոսէփ Սուրբ Խաչ վանքի մէջէն դատարկեց իւր բոլոր շնորհաց առհաւատչեայքն, տպարանն տարաւ յԱստրախան, և եօթնասուն և երկու մանկանց կրթարանն, որ հայոց ազգի մէջ առաջին գիշերօթիկ դպրոցն էր, քանդեց և կամեցաւ Աստրախան կառուցանել։ Այս խորհրդեան համաձայն էր և աղա Յոհաննէս Լազարեանն, որ Լազարեանց ճեմարանն պիտի Աստրախան քաղաքում հիմնէր։

Այսպիսի ազգաշէն խորհրդոց ժամանակին՝ Ներսէս վարդապետն Աշտարակեցի, որ Էջմիածնի խցերից զննում էր Յոսէփայ ազգաշահ մեծագործութիւններն և կամենում էր խափանել, շատ ջանաց՝ որ աղա Յոհաննէս Լազարեանին և Ղուկաս կաթողիկոսին իրերաց բարեկան անէ, որ Յոսէփայ թևերն կտրտին, բայց Յոսէփ արդէն այնքան զօրացել էր, որ աղա Յոհաննէսն Լազարեան նորա հետ մեծաւ ակնածութեամբ էր վարվում։

Մենք վերագոյն տեսանք, որ 1793 թուին Սերոբէ Պատկանեանն եկաւ Տփխիս, և Հերակլ արքայն վրաց նորան ընկալաւ իւր հովանաւորութեան ներքոյ, և երբ նորա համար Տփխիս մայրաքաղաքի մէջ դպրատուն բացեց՝ ուր տուեց յաշակերտութիւն իւր զաւակաց և թոռանց, նորա օրինակին հետևելով հայոց իշխանք ևս տուին իւրեանց զաւակունք։

Հերակլ արքայն, որ ունէր ընտանեկան նամակակցութիւն Յոսէփ Արղութեան իշխանազնեայ Երկայնաբազուկ արքեպիս-

կոպոսի և շահ Ամիր-խանի հետ ի Հնդիկս, գրեց և ծանոյց երկոցունց ևս Սերոբէ Պատկանեանի դպրատան բացման համար և յերկոցունց ևս ստացաւ շնորհակալութեան նամակ։ Յուսէփ՝ որպէս ազգասէր՝ ուրախութեամբ յայտնեց աղա Յոհաննէս Լազարեանին, և աղա Յոհաննէսն սկսաւ տարեկան ռոճիկ տալ Սերոբէին՝ երկու-հարիւր արծաթ։ Յուսէփայ այս գործն մի կողմնակի սփոփանք էր այն ձախորդութեան, որ կրել էր մի ձեռնարկի մէջ։

(Կը շարունակուի)

---

# ՍՈՃԻ

(Հ. Հէյնէից)

Վայրի հիւսիսում կանգնած է մենակ
Լեռան մերկ ծերպին մի սոճի, մի ծառ,
Եւ օրօրվում է, նիրհում շարունակ՝
Հագած ուսերին մի ձիւնէ շուրջառ։

Եւ երազում է՝ կայ մի անապատ
Էն արևծագի երկրում անհամբաւ,
Այնտեղ բարկ ժայռին մենակ ու վհատ
Բարձր թառել է գեղեցիկ արմաւ։

Դ. ՆՈՐԵՆ

---

# ԿՈՄՍ ԼԵՎ ՆԻԿՈԼԱԵՎԻՉ ՏՈԼՍՏՈՅ

*(Ստեղծագործութեան խարակտերիստիկայի փորձ)*

---

*«Կեանքի իմաստի» հարցը այն «անլուծելի հարցերից» մէկն է, որը մարդկութեան առաջին գիտակցական քայլերից ըսկսած՝ կանգնում է նրա ճանապարհի առջև և պահանջ դնում շուտափոյթ լուծման։ «Կեանքի իմաստը» և տիեզերական չարիքի անիմաստութիւնը—ահա այն երկու հակադիր ձևակերպութիւնները, որոնք չեն կարող գոյութիւն ունենալ իրար հետ և որոնցից մէկն ու մէկը պէտք է յաղթահարել։ Եթէ իրականութիւնը անիմաստ է, եթէ անհնարին է արդարացնել տիեզերքում կատարուող այն անվերջ չարիքը, որի վակխանալիան շրջապատում է անհատին և մարդկութեանը, և եթէ կեանքը սոսկ մի «դիւային կատակերգութիւն» է, ապա կեանքի հարցը ինքն ըստ ինքեան է լուծվում. կեանքը անիմաստ է, ուստի և* ապրել չարժէ։ *Սակայն այս եզրակացութիւնը, որ հակառակ է գոյութեան բնազդին, ընդունելի չէ, և յիրաւի մարդը չէր կարող ընդունել այն, ուստի և իր անընդհատ որոնումների մէջ նա ձգնում է գտնել կեանքի* արդարացումը։ *Ամենայն ինչի գոյութեան նպատակայարմարութիւնը—դա մի այլ առարկութիւն է կեանքի* à priori *անիմաստութեանը դէմ, ուրեմն և բնականաբար պէտք է դրուէր և դրվում է նոյն իսկ «չարիքի» նպատակայարմարութեան հարցը։ Ժամանակակից իրականութեան մէջ «կեանքի իմաստի» հարցը լուծվում է երկու կերպ. նրանով զբաղուած են թէ* առաջադիմութեան պօզիտիվ տեսութիւնը, *որը գոյութեան նպատակն ու իմաստը տեսնում է* Funtstaat-*ի մէջ, և թէ* առաջադիմութեան միստիկ տեսութիւնը, *որը կեանքի վրայ նայում է որպէս բարձրագոյն կամքի նախասահմանութեան, որպէս բացարձակ բանականութեան և յաւիտենական Բարութեան վրայ։ Քննելով Տոլստոյի ստեղծագործութիւնը իբրև «կեանքի իմաստի» հարցի լուծման անընդհատ որոնումն, մեր ներկայ*

ակնարկի մէջ մենք կը փորձենք ցոյց տալ, թէ ինչպէս սկըզբում առաջ է գալիս նրա ստեղծագործութեան մէջ այդ հարցը և թէ ինչպէս՝ ինքնազննման և ինքնաքննադատութեան միջոցով՝ Լէվ Տոլստոյը ազատուելով իր միջավայրի բոլոր շերտաւորումներից, դաստիարակութիւնից և կրթութիւնից, գալիս է ի վերջոյ իր փիլիսոփայական այն սինթէզին, որը՝ չնայած դրա դէմ եղած առարկութիւններին՝ կազմում է առաջադիմութեան իրայատուկ մի տեսութիւն և որպէս այդպիսին պէտք է համարուի միստիկ տեսութիւն: Աւելորդ չենք համարում ընդգծել հէնց այստեղ, որ ինքնազննման ուղին հէնց բանաստեղծական ինտուիցիայի հէնց այն ուղին է, որը տարբերում է գեղարուեստագէտի ստեղծագործութիւնը գիտնականի սիստեմատիկ աշխատութիւնից և որը անալոգիայով կարող է հաւասարուել գիտութեան մէջ կատարուող գիւտերին, որովհետև բանաստեղծական ինտուիցիան, ունենալով իբր օբիեկտ սոսկ գրողին իրան և նրա անձնաւորութիւնը, ստեղծագործական հանճարի զօրութեամբ գալիս է եզրակացութիւնների, որոնց անխախտ լինելը պահուած է ճշգրտութեան մէջ նոյն եզրակացութիւնների ընկատմամբ բոլորի կողմից շօշափելի: Ներկայ պարագայում Տոլստոյի բանաստեղծական ինտուիցիան նշանաւոր է նրանով, որ հրապարակ հանելով իսկական գիւտեր ռուս ժողովրդի ժողովրդական և ազգային հոգեբանութեան գաւառում, նա դրանով գրաւեց մեծ գրողի ուշադրութիւնը այդ պսիխիքայի վրայ, որի զգացմունքների և համոզմունքների մէջ Տոլստոյը որոնում էր իր վարդապետութեան հիմունքները:

—

Լէվ Նիկոլաեվիչ Տոլստոյը իր ստեղծագործութեան արշալոյսին հրապարակ գալով իր «Մանկութիւն», «Պատանեկութիւն» և «Երիտասարդութիւն» գրուածքներով՝ գրաւեց իր շըրջապատողների ուշադրութիւնը իր վրայ նրանով, որ այդ գըրուածքների մէջ՝ բացի անուրանալի գեղարուեստականութիւնից՝ դրուած էին հարցեր, «որոնց առաջադրութիւնը», ըստ խոստովանութեան հէնց գրքի հերոս՝ Նիկոլենկա Իրտենիեվի, «կազմում է այն բարձրագոյն աստիճանը, որին կարող էր հասնել մարդկային խելքը, որոնց լուծումը սակայն նրան տրուած չէ» և ապա նրանով ևս, որ հերոսի «մանկական, թոյլ խելքը» «անփորձութեան ամբողջ թափով ճգնում էր բացատրել» նրանց: Այդ հարցերն էին «վերացական հարցեր մարդու կոչման, ապա կեանքի և հոգու անմահութեան նկատմամբ» («Отрочество»,

գլ. XIX)։ Հէնց միմիայն այդ հարցերի առաջադրումը ցոյց էր տալիս խելքի զարմանալի զննողութիւն, խելքի, որը տրամադիր չէր ընդունելու կեանքը իբրև մի պարգև, որը փորձում էր լուծել իր համար գոյութեան իմաստն ու նպատակը։ Բացի այդ հարցերի առաջադրումից անհրաժեշտ է ընդգծել այդ ըսկզբնական աշխատութիւնների մէջ տակաւին «չկազմակերպուած խելքի» փորձը՝ ինքնամփոփման ճանապարհով լուծել այդ հարցերը իր համար գործնականապէս, լուծել այնպէս, որ առօրեայ կեանքում հնար լինի գտնել նրանց գործադրութեան եղանակը։ Նիկօլինկա Իրտենիևը գալիս է այն համոզման, որ դաստիարակութեան միջոցով նրա մէջ պատուաստուած մոլար հասկացողութիւնների իմաստը կայանում էր մարդկանց բաժանման մէջ comme il faut-ի և comme il faut pas-ի և որ comme il faut-ն հասարակութեան մէջ ինքնուրոյն դրութիւն է, որ մարդուն հարկ չկայ աշխատելու լինել ո՛չ պաշտօնեայ, ո՛չ կարետագործ, ո՛չ զինուոր, ո՛չ գիտնական, երբ նա comme il faut է, որ հասնելով այդ դրութեանը նա արդէն կատարել է իր պարտքը և նոյն իսկ մարդկանց մեծ մասից բարձր է լինում կանգնած («Юность», գլ. XXXI)։ Այդպիսով պարզվում է, որ «Дѣтство»-ի, «Отрочество»-ի և «Юность»-ի պատանի հերոսի համար կեանքը չէ եղել մի կատակ, որի մէջ նրա դերը նախասահմանուած լինէր ծննդով ու միջավայրով, այլ ընդհակառակը, այդօրինակ կեանքը նրան չէ գոհացնում և նա դրանց համար որոնում է բարձրագոյն սանկցիա։ Այդ աշխատասիրութիւնների ինքնակենսագիր բնոյթ ունենալը դուրս է ամեն կասկածից*), իսկ դա հնարաւորութիւն է տալիս մեզ պնդելու, որ հէնց այդ գրուածքների մէջ արդէն ակնկալվում է ապագայի Տօլստոյը, որը հէնց այստեղ «ի՞նչ կայ» հարցից անցնում է «ի՞նչ պէտք է լինի» հարցին, որը պէտք է ազատուի ինքն իրանից, իբրև արգասիք որոշ միջավայրի, որոշ դաստիարակութեան ու կրթութեան, որպէս զի իր հոգեկան աշխարհը լցնէ նոր, մի այլ բովանդակութեամբ։ Դառնալով նրա «Казаки» գրուածքին, որը ժամանակագրական կարգով պէտք է դնել «Юность»-ից յետոյ, մենք տեսնում ենք, որ Տօլստոյի՝ ստեղծագործութեան սկզբնական աստիճանում՝ շօշափած հարցերը ոչ միայն չխլացան, այլ, ընդհակառակը, ստացան աւելի սուր

*) Տես Загоскинъ, „Студенческіе годы Л. Н. Толстого“ („Истор· Вѣстникъ“, 1894 г· Январь)· Р Левенфельдъ, „Графъ Толстой· Его жизнь, произведеніе и міросозерцаніе“.

բնաւորութիւն. մենք տեսնում ենք, որ սեփական կեանքի և
կենսական ձգտումների սանկցիան գտնելու ձգտման մէջ մեծ
գրողի քննադատ խելքը գալիս է վերագնահատելու ըստ ամե-
նայնի նշանաւոր խթանների՝ մարդկային կեանքի և գործունէ-
ութեան: Օլենինը, գրուածքի հերոսը, երիտասարդ արիստոկ-
րատ է, դժգոհ կեանքից, ձանձրացած բարձր շրջանից և իր
ամբողջ անցեալ կեանքը կատարեալ դատապարտութեան են-
թարկող, նուիրվում է «կեանքի իմաստի» հարցին, թէ ինչպէս
է պէտք ապրել՝ բախտաւոր լինելու համար: Եւ ձգտելով պա-
տասխանելու այդ հարցին, Օլենինը գտնում է հետևեալ ճշմար-
տութիւնը. բախտաւորութիւնը՝ ուրիշների համար ապրելու մէջ
է: Եւ դա պարզ է: Մարդու մէջ դրուած է բախտաւորութեան
պահանջը, ուրեմն և նա օրինական է: Բաւականացնելով այդ
պահանջին եսականօրէն, այսինքն որոնելով իր համար հարս-
տութիւն, փառք, կեանքի և սիրոյ յարմարութիւններ, կարող
է պատահել, որ հանգամանքները այնպէս դասաւորուեն, որ
անհնարին դառնայ այդ ցանկութիւններին բաւարարութիւն
տալը: Հետևաբար այդ ցանկութիւնները օրինական չեն, իսկ
բախտաւորութիւն չցանկալը նոյնպէս ապօրինի: Ուրեմն ո՞ր
ցանկութիւնները միշտ կարող են բաւարարութիւն ստանալ,
չնայած արտաքին պայմաններին, ո՞ր:—Սէրը, անձնազոհու-
թիւնը (գլ. XIX): Այդ գտնուած ճշմարտութիւնը միաժամա-
նակ Օլենինի համար բաց է անում նոր հեռանկարներ, ձուլ-
վում է հին, անիմաստ կեանքի դէմ յարուցած նրա բողոքի
հետ և բերում հասցնում է նրան ռամկանալու գաղափարին:
«Ռամկանալ», դէն գցել այն ամենը, ինչ որ տուել է նեղ մանր
աշխարհի միջավայրը, որի մէջ նա մեծացել ու դաստիարակուել
է, ազատուել այդ անպէտք ու ծանր շերտաւորումներից, որոնք
միմիայն իր նմաններից աւելի հեռացնում են, կղզիացնում մա-
նրը, անձնական շահերի շրջանում,—ահա որն է դառնում Օլե-
նինի կեանքի նպատակը: Օլենինը խզում է իր կապերը բոլորի
հետ և վճռում հեռանալ Կովկաս, մի ստանիցա, «որտեղ կարե-
լի է բնութեանը և մարդկանց մօտիկ ապրել, ոչ ոքին վնաս
չհասցնել, այլ մարդկանց բարիք անել»: Եւ ճանապարհին վե-
րածնուած, լուսաւորուած Օլենինի համար այլ ևս բոլորը՝ «կա-
զակները, կառապանները, հսկիչները թւում էին հասարակ է-
ակներ, որոնց հետ կարելի է կատակել, զրուցել, առանց նա-
խապէս մտածելու թէ ով ինչ կարգի է պատկանում: Բոլորը
պատկանում են մարդկային միևնոյն ցեղին, որը Օլենինի հա-
մար սիրելի էր անգիտակցօրէն» (գլ. III): Ռամկացումը Օլե-

նինին չէ աջողվում, բայց դրա փոխարէն Կովկասի ստանիցայում նա ծանօթանում է մի նոր աշխարհի հետ, բաց է անում իր համար նոր, խորը աշխարհահայեցողութիւն, որի մասին կը խօսենք յետոյ, որովհետև այստեղ մեզ կարևոր է ընդգծել գաղափարների, մտքերի և զգացողութիւնների այն պրօգրեսը, որ մենք գտնում ենք Տօլստոյի մէջ՝ սկսած այն մօմենտից, երբ Նիկօլինկա Իրտենիեվը մարդկանց բաժանում էր comme il faut-ի և ոչ comme il faut-ի մինչև այն մօմենտը, երբ նա գալիս է մարդկային ցեղի միութեան գիտակցութեան, որը ամբողջովին նրա համար սիրելի էր. կարևոր է ընդգծել նոյնպէս այն նոր խնդիրը, որը նա դնում է իր առջև, ձևակերպելով իր ապագայ գործունէութիւնը, մի գործունէութիւն՝ նուիրուած սիրոյ և անձնազոհութեան։ Եւ առանց նպատակի չէր, երբ Տօլստոյը միևնոյն վէպի մէջ Օլենինին—այդ լուսաւորուած մարդուն—հակադրել էր Բէլէցկիին, որը ամբողջովին շաղախուել է իր նեղ, մանր աշխարհի շահերով, որին օտար էին բարոյական ինքնակատարելագործութեան մասին երազները և որի համար մարդկութիւնը իբրև իդէալական միութիւն գոյութիւն չունի։ Այստեղ Տօլստոյը կարծես հետևում է Գէօթէի խորհրդին. յանձին աշխատասիրութեան մէջ մտնող անձերի, որոնք օժտուած են այն ամեն բացասականութեամբ, որը իր մէջ գտնում է ինքը գրողը, տալ այդ բացասականութեան մի ելք, որպէս զի առաջիկայում ուրախութեամբ ըմբռնվի նոր կեանքը։

„Казаки“ գրուածքից յետոյ „Война и Миръ“ և „Анна Каренина“ հեղինակութիւնները ցոյց են տալիս, որ Տօլստոյի ինքնափրկման այն պրօցեսը, որը մենք գտել էինք նրա ստեղծագործութեան առաջին մօմենտից, ընթանում էր արագ տեմպով, որ նրա ինքզննումն ու ինքնաքննադատութիւնը աճում են, որ նրա ստեղծագործական ինտուիցիան դառնում է աւելի խորը և գիւտը աւելի նշանաւոր։ „Война и Миръ“-ում արդէն շեշտակի դրուած է հարցը մարդկային կեանքի իմաստի և արժէքի մասին և որոշուած է այն դերը, որը կարող է խաղալ մարդու ինքնուրոյն կամքը։ Անդրէյ Բոլկօնսկին պատերազմի մասին արած իր դատողութիւնների մէջ՝ այդ գաղափարը հասցնում է տրամաբանական վախճանի և գալիս է այն գիտակցութեան, որ մարդու կամքը՝ ուղղուած չարի կողմը, մասնաւորապէս պատերազմի, ապօրինի է, որովհետև նրա օրինաւորութիւնը պետք է լինէր նրա տրամաբանական հետևողականութիւնը։ Այդպէս՝ Լէվ Տօլստոյը հէնց „Война и Миръ“-ում հասնում է այն հարցերին, «որոնց առաջադրութիւնը կազմում

է մարդկային խելքի զարգացման բարձրագոյն աստիճանը», և լուծում է Նրանց ոչ թէ «անփորձ պատանեկութեան ամբողջ թափով», այլ որպէս հասուն մարդ, որի յետևը կանգնած է Օլենինի անցրած կեանքը։ Եւ եթէ „Казаки“ գրուածքում Բէլեցկիի տիպի ստեղծագործութեամբ Տօլստոյը անջատվում էր «աշխարհից», „Война и Миръ“-ում սակայն իր որոնումները մարմնացնելով Պիեր Բեզուխովի և Անդրէյ Բալկօնսկիի տիպերի մէջ՝ Նա անջատվում էր արդէն որոշ հասկացողութիւնների մի ամբողջ «աշխարհից», որքան էլ այդ հասկացողութիւնները լինէին լայն, և գալիս է ընդունելու համայն մարդկութեան համար ընդհանուր աշխարհը, որի մէջ ամեն մէկը ունի մի բընածին և անխախտ իրաւունք՝ գոյութեան և երջանկութեան։

Լէվինը՝ «Анна Каренина»-ի մէջ՝ վերջնական գումար է դնում Օլենինի որոնումների, Անդրէյ Բալկօնսկիի և Բէզուխովի և վերջնականապէս լուծում է իր համար, ապա և Տօլստոյի համար, «կեանքի և մահուան գաղտնիքը»։ Այդպիսով՝ դնելով կեանքի իմաստի հարցը, Տօլստոյը կարծես կանխորոշում է Նրա բարոյական բնաւորութիւնը, որովհետև մօրալը լինելով ըստ մեծի մասին կեանքի գործ՝ միշտ բերում հասցնում է «կեանքի գաղտնիքի» մետաֆիզիք հարցին և այդ ուղիի վրայ միշտ հանդիպել է կրօնի հետ, որը, իբրև ուսմունք «մահուան գաղտնիքի», պէտք է բարձրագոյն սանկցիա տար կեանքի մօրալ կողմին։ «Կեանքի գաղտնիքը», այսինքն՝ մարդկային գործունէութեան շարժիչ ույժերի և մօտիվների հարցը, Լէվինի առաջադրութեամբ, ստանում է ա՛յն բացարձակ սանկցիայի բնաւորութիւնը, ա՛յն անխուսափելիութեան, որոնցով բնորոշվում են կրօնական դօգմաները և որոնց վճռողական իմպերատիվների մասին վէճ լինել անգամ չէ կարող։ Լէվինը դատում է այսպէս. իմ կենսական վարմունքների, իմ գործողութիւնների մէջ ես ղեկավարվում եմ մի այնպիսի բանով, որը ոչինչ ընդհանուր չունի բանականութեան ցուցմունքների հետ, մի այնպիսի բանով, որը իր անհասանելի էութեամբ վճռողական դեր է խաղում իմ կենսական գործողութիւնների մէջ։ Այդ զօրութեամբ, որը որոշում է Նրա վարմունքները, չէր հանդիսանում և չէր կարող հանդիսանալ բանականութիւնը, որովհետև «դատողութիւնները Նրան հասցնում էին կասկածի և խանգարում Նրան տեսնելու թէ ո՛րն է կարևոր և որը՝ ոչ։ Բայց երբ Նա չէր մտածում, այլ ապրում էր, այն ժամանակ Նա չէր դադարում զգալուց՝ իր հոգում նստած անսխալական դատաւո-

րին, որը վճռում էր, թէ երկու վարմունքներից որն է լաւ և որը վատ, և հէնց որ նա վարվում էր այնպէս, ինչպէս հարկն էր, իսկոյն զգում էր նա այդ բանը» (գլ. X)։ Վերը մենք ասացինք, որ այն հարցը, որը պէտք է լուծուած լինէր Լէվինի կողմից, ըստ իր ձևի նա կրում էր բարոյագիտական բնաւորութիւն, ուստի և բնական էր բարձրագոյն դատաւորի և ճշմարտութեան հարցի առաջադրումը, որը պէտք է լինէր իբր հիմունք նրա կեանքի գործունէութեան. և Լէվինը դրել էր ոչ թէ ճշմարտութեան էութեան հարցը, ոչ թէ ճանաչողութեան սահմանների և հնարաւորութիւնների մասին էր նա կամենում իմանալ, այլ միմիայն՝ ինչ է ասում ճշմարտութիւնը, որո՞նք են նրա պատգամները, նրա հրահանգները։ Պարզ է, որ այս հարցին զուտ բանականութիւնը ըստ ինքեան պատասխանել չէ կարող, ուստի և ապարդիւն եղան նաև Լէվինի փորձերը՝ գըտնել նրան ալեկոծող հարցերի պատասխանները փիլիսոփայական սիստեմների և ճանաչողութեան տեսութեան ուսումնասիրութեան մէջ։

Լէվինի համար վճռական նշանակութիւն ունեցաւ նրա՝ գիւղացի Ֆէօդորից լսած դատողութիւնը, որը մի այլ գիւղացու նկատմամբ արտայայտուեց այսպէս. «Ճշմարտախօս ծերունի է, ապրում է հոգու համար, Աստուծուն յիշում է» (գլ. XI)։ Կարծես լոյսի փայլուն ճառագայթներ շաղ տրուեցին Լէվինի աչքերին. մի հարց, որ երկար ժամանակ նրան տանջել էր, այժմ լուծուած էր, գտնուած էր այն անսխալական դատաւորի անունը, որը նրա կամքին ուղղութիւն էր տալիս, անսխալ կերպով լուծում էր, թէ ինչն է լաւ և ինչը՝ վատ։ Խղճի այն ձայնը, որը Լէվինը միշտ կարող էր գտնել իր մէջ, Աստուածն էր, դա անկասկած էր. և սակայն քանի որ դա այդպէս էր, քանի որ գըտնուած էր կրօնական սանկցիան, ապա ուրեմն և կեանքի մէջ բացուեց լայն և ընդարձակ ճանապարհ, որով համարձակօրէն կարող էր գնալ իւրաքանչիւր մարդ, ունենալով իր մէջ Աստուծուն։ Իրտենիեվի հարցերով սկսուած ծանր ճանապարհը անցած էր և հարցերի լուծումը գտնուած էր, որոնց առաջադրութիւնը կազմում էր մարդկային խելքի զարգացման բարձրագոյն աստիճանը։

Բայց այստեղ, երբ մենք համառօտ գծերով հետևեցինք Տոլստոյի հոգեկան աճեցմանը, ծագում է մի հետաքրքրական հարց այն գեղարուեստական գիւտերի մասին, զուտ ինտուիտիվ գիւտերի, որոնք բոլոր ժամանակ զուգընթաց էին նրա հետ իր

ինքնազատման ճանապարհին և որոնք ծառայել են Տոլստոյին ինչպէս գեղարուեստական-փիլիսոփայական ընդհանրացումների աղբիւրներով, այնպէս էլ այդ ընդհանրացումների ճշգրտութեան ամրապնդումներով։

Ա. ՄԱԼԽԱՍԵԱՆ

(Կը շարունակուի)

---

# ՏԱՐԵՄՈՒՏԻՆ

Անիւը դարձեալ մի պտոյտ գործեց,
Եկաւ նոր տարի.
Իմ արև օրից մի ժամ էլ պակսեց,
Մօտ եմ գիշերի։

Անդարձ հեռացաւ պարզ առաւօտը,
Մէգի մէջ կորաւ.
Անց է կէսօրը, սառչում է օդը,
Երեկոն հասաւ։

Շուտով կը մթնի, և ես կը քնեմ
Երկար ու խաղաղ.
Բայց թէ առաւօտ դարձեալ կը տեսնե՞մ,
Զգիտեմ, աւա՜ղ։

ԶԱՐԷՀ

---

# ՏԱՐԱՍ ՇԵՎՉԵՆԿՕ

## (1861—1911)

---

### I

Այս տարի փետրուարի 26-ին լրացաւ մալօռուսական նշանաւոր բանաստեղծ Տ. Շեվչենկօյի մահուան յիսնամեակը։ Ռուսական ամբողջ մամուլը յիշատակեց այդ օրը, և բազմաթիւ յօդուածներ, քննադատականներ ու յիշողութիւններ նուիրուեցին բանաստեղծին այդ առիթով։

Մենք ևս կը ցանկայինք ծանօթացնել «Արօրի» ընթերցողներին այդ նշանաւոր և խոշոր դէմքի հետ, որ նոյն դերն է խաղում մալօռուսական ժողովրդի մէջ, ինչ Շէկսպիրը՝ անգլիացիների, Վիկտոր Հիւգօն՝ ֆրանսիացիների և Շիլլէրը՝ գերմանացիների մօտ, իբրև ազգային մեծ բանաստեղծ։

Տարաս Շեվչենկօն ծնուել է Կիէվի նահանգի Զվենիգօրօդսկի գաւառի Մօրինէց գիւղում 1814 թ. փետրուարի 25-ին ճորտ հօրից։ Նրա մանկութեան առաջին տարիները անցան անհոգ և անխնամ. ինչպէս ամեն մի գիւղացի երեխայ, նա ինքն իրան էր թողնուած և ամբողջ օրը թափառում էր դաշտերում, բարձրանում էր բլուրների վրայ, լողանում էր գետի մէջ, քնում էր այգիներում։ Այդ հանգամանքը, այն է՝ ազատ և թափառական կեանքը, զարթեցրեց նրա մէջ շարժունութիւն, հարցասէր և հետախոյզ բնաւորութիւն և սաստիկ ազդեց նրա երևակայութեան ու ֆանտազիայի զարգացման վրայ։ Կորցնելով մօրը 1823 թ., նա մնաց որբ. խորթ մայրը սկսեց հալածել նրան և չարչարել։ Տարասի համար վրայ հասան մանկական ծանր վշտի օրեր։ Շուտով մեռաւ և հայրը, որ ոչ մի ժառանգութիւն չթողեց որդուն, բացի նրանից, որ նա ճորտ մնաց իր հօր նման և այժմ ևս կալուածատիրոջ սեպհականութիւնը դարձաւ։ Նա 11 տարեկան էր, երբ մնաց բոլորովին որբ. Նա գիւղի տիրացուի մօտ ուսման մտաւ և սովորեց գրել-կարդալ։ Տիրացուն արբեցող մարդ էր և ամեն շաբաթ օրերը

իր աշակերտներին պարտադիր կերպով գանահարման էր ենթարկում, անխտիր թէ մեղաւորներին և թէ անմեղներին։ Չըտանելով այդպիսի կեանքը՝ Տարասը փախաւ տիրացուի դըպրոցից, բայց առաջուց վրէժը լուցեց իր կերած բոզգիների համար։ Երբ տիրացու վարժապետը մեռելի նման արբած ընկած էր, նա նոյն բոզգիներով մի լաւ ծեծեց նրան և փախաւ։ Նա իր հետ տարաւ մի գիրք, որ պատկերազարդ էր։ Այդ գիրքը ծնեցրեց նրա մէջ կիրք դէպի նկարչութիւնը, որի համար նա դեռ մանկութիւնից առանձին սէր էր ցոյց տալիս, խազելով պատերի վրայ զանազան նկարներ մատիտով կամ ածուխով։ Նա փախաւ մի այլ գիւղ՝ Լիսեանկա՝ այդտեղի սարկաւագի մօտ, որ «նախաշքեարի» համբաւ ունէր. բայց սա ևս արբեցող մարդ էր։ Ապա նա նոյն գիւղի քահանայի մօտ սովորեց գրել և յետոյ, լսելով որ Տարասովկա գիւղում մի լաւ «նախաշքեար» կայ, փախաւ նրա մօտ՝ նկարչութիւն սովորելու։ Բայց «նշանաւոր նախաշքեարը» գտաւ, որ Տարասը ոչ մի ընդունակութիւն չունի ոչ միայն նկարչութեան, այլ որևէ մի արուեստի կամ արհեստի համար, ուստի և Տարասը ստիպուեց գնալ Կիրիլովկա գիւղը և այդտեղ դառնալ գիւղի հովիւ ու արածել ոչխարները։ Բայց հէնց չօբանութեան այդ ժամանակն և նրա կեանքի երջանիկ օրերն էին, որովհետև այդտեղ, բնութեան ծոցում, նրա հոգին զարթնեց նոր կեանքի և ազատութեան համար։

Սակայն, ի բնէ շարժուն և անհանգիստ, նա շուտով թողեց ոչխար արածելը և գնաց Խլեբնովկա գիւղը, որ հռչակ էր ստացել իր նախաշքեարներով։ Այդտեղ գնահատեցին պատանի Տարասի ձիրքերը. բայց նրան ուսման տալու համար՝ հարկաւոր էր ունենալ նրա տիրոջ թոյլտւութիւնը, քանի որ Տարասը ճորտ էր։ Ճորտատէրն էր պոմէշչիկ Էնգելհարտը, որ ապրում էր Վիլնայում։ Նրա կալուածների կառավարիչը, նկատելով Տարասի ընդունակութիւնը, վերցրեց և ուղարկեց նրան իր տիրոջ մօտ՝ Վիլնա։ Ճորտատէր Էնգելհարտը ապագայ բանաստեղծին և գեղարուեստագէտին ուղարկեց իր ճորտանոցը և կարգեց նրան կազաչեօկ, այսինքն պատանի սպասաւոր, որի պաշտօնն է ամբողջ օրը տնկուած մնալ նախասենեակում և չուբուխ լցնել։

Տարակոյս չկայ, որ տաղանդաւոր և տպաւորուող պատանու վրայ այդպիսի կեանքը սոսկալի ճնշող տպաւորութիւն էր թողնում. նա արդէն զգում էր ամօթալի ճորտութեան ամբողջ անարգանքը։ Վշտից նա երգում էր գայդամակների երգը, ծածուկ նկարում էր պատկերներ պոմէշչիկի տանը։ Մի անգամ պօ-

մէշչիկ Էնգելհարտը վրայ հասաւ գիշերը ուշ ժամանակ, երբ Տարասը պատկեր էր նկարում, և սաստիկ ծեծելով նրան՝ հրամայեց երկրորդ օրը ախոռատանը ենթարկել անարգ էկզեկուցիայի (գանահարութեան) նրա համար, որ նա աւելորդ մոմ էր վառում գիշերները։ Վերջապէս, Էնգելհարտը նկատեց Շեվչենկոյի ընդունակութիւնները և 1832 թ. հետը տանելով Պետերբուրգ՝ տուեց նրան ուսման Շիրեաէվ նկարչի մօտ, որ մի կոպիտ և անգութ մարդ էր և յաճախ ծեծի ու րօզգիի էր են-



Т. Шевченко

թարկում իր աշակերտներին։ Շեվչենկոն շուտով սովորեց պատկերներ նկարելը և իր տիրոջը վճարում էր նրանով, որ քաշում էր նրա ծանօթների և բարեկամների պատկերները։

Պետերբուրգում նա ծանօթացաւ գեղարուեստագէտ Սօշենկօյի հետ, որ ծանօթացրեց նրան ուրիշ գեղարուեստագէտների և գրողների հետ և տուեց նրան կարդալու գրքեր։ Այդ անձինք—Գրեբէնկա, Ժուկօվսկի և Բրիւլօվ—կարեկցութիւն ցոյց տուին

երիտասարդ տաղանդին և աշխատեցին ազատել նրան ճորտութիւնից ու մտցնել Գեղարուեստից Ակադեմիան։ Եւ ահա նկարիչ Բրիւլօվը քաշեց Ժուկօվսկիի պատկերը և վիճակախաղ սարքեց. գոյացած դրամով վճարեցին Էնգելհարտին 2500 ռուբլի թղթադրամ, և 1838 թ. ապրիլի 22-ին Շեվչենկօն ազատուեց ճորտութիւնից՝ 24 տարեկան հասակում։

## II

Երիտասարդ Տարասը այլ ևս ազատ էր. ազատ մարդ էր և քաղաքացի, ազատ՝ ճորտութեան անարգանքից։ Հէնց իր ազատագրութեան այդ տարին Շեվչենկօն արտադրեց իր առաջին բանաստեղծական գործը՝ «Պատճառ» (Причина) բալլադը։ Իսկ 1840 թ. լոյս տեսաւ նրա ոտանաւորների առաջին տպագրական ժողովածուն «Կօբզար» անունով, որ և մնաց բոլոր նրա արտադրութիւնների հրատարակութեան անունը։

Ռուսական քննադատութիւնը շատ սառն ընդունեց այդ ժողովածուն։ Շեվչենկօն բանաստեղծութեան հետ միասին շարունակեց զբաղուել և նկարչութեամբ. նա ուսանում էր, յաճախում էր բժշկական ակադեմիայի և համալսարանի դասախօսութիւնները, գրքեր կարդում, ծանօթութիւն էր հաստատում գեղարուեստագէտների հետ։ Բայց և ոչ մի րոպէ չէր մոռանում մտածել սիրեցեալ հայրենիքի՝ Ուկրայինի մասին, որ մագնիսի պէս քաշում էր նրան։ Ստանալով 1843 թ. ազատ գեղարուեստագէտի կոչումը, նա գնում է իր հայրենիքը, ուր տեսնելով իր հարազատ ժողովրդի և երկրի վշտի և տանջանքների պատկերները, մանաւանդ ճորտութեան արտադրած չարիքները, նա սոսկալի թախիծի և վշտի մէջ է ընկնում և իր բանաստեղծութիւնների մէջ ողբում ու կոծում։

Մալօռուսիայի կամ Ուկրայինի պատմական վայրերի անկումն ևս արտասուք էին հոսեցնում Շեվչենկօյի աչքերից։ Մի անգամ ևս Պետերբուրգ գնալով՝ նա 1845 թ. սկզբին վերադարձաւ հայրենիք, այս անգամ հաստատ դիտաւորութեամբ մնալ մշտապէս այդտեղ և նուիրուել նրա ծառայութեան։ Այս անգամ նա մօտեցաւ Կուլիշի, Կօստոմարօվի և ուկրայինեան այլ գործիչների հետ, որոնք, սիրահար հնութեան, ուսումնասիրում էին Մալօռուսիայի պատմութիւնը և ազգագրութիւնը։ Շեվչենկօն միացաւ նրանց, սկսեց նկարել պատմական կոթողները, ժողովել նիւթեր և գրել ոտանաւորներ։ Միաժամանակ նա կամեցաւ

ճաշակել և ընտանեկան երջանկութեան քաղցրութիւնը։ Բայց փորձն անաջող եղաւ, որովհետև Կիրիլօվկա գիւղի քահանան, որի աղջկայ ձեռքը և խնդրեց, մերժեց տալ, չնայելով որ երիտասարդները սիրում էին իրար։ Այդ անաջողութիւնից յետոյ Նա մտադրուեց գնալ Իտալիա. Նրա տաղանդը յարգող մի անշահասէր տիկին առաջարկեց դրա համար միջոցներ, բայց այդ ևս չաջողուեց, որովհետև մի նոր աղէտ եկաւ խորտակելու բոլոր յոյսերը և ամբողջ 10 տարի աքսորելու բանաստեղծին իր հայրենիքից։ 1847-ի գարնան՝ Շեվչենկօն, Կօստօմարօվը և մի քանի այլ գործիչներ ձերբակալուեցին և ուղարկուեցին Պետերբուրգ իբրև պետական յանցաւորներ. Նրանք մեղադրվում էին իբրև պատկանող մի գաղտնի ընկերակցութեան, որ կոչվում էր «Կիրիլլօ-Մէֆօդեան» ընկերութիւն։

Պէտք է ասել, որ այն ժամանակուայ սլավօնական հայրենասէրները—Շաֆարիկ, Ցանկա, Միցկէվիչ—և ռուսական սլավեանօֆիլները համակուած էին սլավեան բոլոր ցեղերի համերաշխութեան գաղափարով։ Եւ ահա Կօստօմարօվը և Կուլիշը յղանում են միտք՝ կազմելու մի ընկերութիւն «Կիրիլլօ-Մէֆօդեան» անունով, որի նպատակը լինելու էր ստեղծել սլավեանների միութիւնը ֆեդերատիվ դաշնակցութեան հիմունքով, դաշնակցութեան մէջ մտնող բոլոր ազգութիւնների լիակատար համահաւասար իրաւունքով։ Այդ ընկերութեան ծրագիրն էր միայն կազմուած, և ընկերութիւնը իրողապէս դեռ գոյութիւն չունէր։ Բայց մասնակիցներից մէկի դաւաճանութեամբ բնագիրն ընկաւ ռուսաց իշխանութեան ձեռքը, և պայթեց աղէտը։ Խուզարկութեան ժամանակ Շեվչենկօյի մօտ գտան Նրա ոտանաւորները և «Երազ» պօէման։

Մի քանի ամիս բանտարկութիւնից յետոյ Պետրօ-Պաւլօվսկի բերդում, Շեվչենկօն դատապարտուեց զինուորական աշխատութիւնների և աքսորուեց Օրէնբուրգ։ Բարձրագոյն հրամանով Նըրան արգելուեց գրելը և նկարելը, և նա բանտարկուեց Օրսկի բերդում, ուր պէտք է կատարէր զինուորական ծանր աշխատութիւնները։ Մեծ գեղարուեստագէտը, Ուկրայինի Պրօմէթէօսը դատապարտուեց դանդաղ հոգևոր մահուան։ Երևակայեցէք Նրա հոգեկան սոսկալի տանջանքները՝ հեռու հայրենիքից, մի հեռաւոր բերդում փակուած, կոպիտ և դաժան մարդկանց մէջ, զրկուած հնարաւորութիւնից՝ գրել, նկարել, կարդալ, հաղորդակցութիւն ունենալ դրսի աշխարհի հետ և միայն զինուորական մարզանքներ կատարել։ Արդարև, տրագիկական էր Նրա դրութիւնը և կարելի էր խելագարուել, կամ բոլորովին ընկնել հոգեպէս և

բարոյապէս։ Բայց Շեվչենկոյի ամուր, տոկուն հոգին դիմացաւ այդ տանջանքներին, որոնք անբուժելի վէրքեր հասցրին նրան, բայց չընկճեցին։

Բարեբախտաբար, 1853 թ. բերդի հրամանատար նշանակուեց մի անձն՝ Ուսկով, որի ընտանիքի մէջ բանաստեղծը գտաւ անակնկալ աջակցութիւն և բարի, սրտագին վերաբերմունք դէպի իրան։ Նա հնարաւորութիւն ունեցաւ ստանալ նամակ, գրքեր. յոյսը վերածնուեց բանաստեղծի մէջ, թէև նրա առողջութիւնը շատ տուժել էր։ Բարեկամներին աջողուեց վերջապէս ձեռք բերել նրա ներումը և ազատութիւնը, շնորհիւ Գեղարուեստից Ակադեմիայի փոխ-նախագահ կոմս Ֆ. Տօլստոյի։ Շեվչենկօն ազատութիւն ստացաւ բարձրագոյն հրամանով և 1858 թ. մարտին վերադառնալով Պետերբուրգ՝ կոմսի ընտանիքի մէջ գտաւ բարեկամութիւն և համակրութիւն։

Պետերբուրգից նա եկաւ հայրենիք, ուր երազում էր ապրել մի խաղաղ անկիւնում, ապրել սիրելի աշխատութեամբ և ընտանեկան խաղաղ ուրախութիւններով։

Բայց անողոք բախտը այդ կողմից ևս հալածեց նրան։ Աքսորը չէր ընկճել նրա անհնազանդ հոգին. բանտարկութեան մէջ նա գրեց բոլոր իր արտադրութիւնների կէսը, որոնց մէջ կան զարմանալի քնքոյշ լիրիկայի մարգարիտներ։ Գոռոզ, խրոխտ միտքն անձնատուր չեղաւ, բայց սիրտը յոգնեց և ծարաւի էր անդորրութեան, քնքշութեան, ողջագուրանքի։ Եւ ահա Շեվչենկօն հետամուտ եղաւ խաղաղ ընտանեկան երջանկութեան, բայց իր ընտրած բոլոր հարսնացուները մերժեցին կապել իրանց բախտը նրա հետ, և նա դատապարտուեց մենաւոր, առանձնակեաց կեանքի և ինքը մխիթարեց իրան իր դառն վիճակի համար, ասելով՝

Не женися на богатій бо вижене з хати
Не женися не убогій, самъ не будешь спати
Оженись на вільній волі, на козацкій долі.

Մոռանալով իր անձնական երջանկութիւնը, Շեվչենկօն ամբողջովին անձնատուր եղաւ ազատագրութեան գործին, որ այդ ժամանակ արդէն կոփվում էր։ Մօտենում էր նրա ամբողջ կեանքի մեծ անրջի կատարումը՝ ճորտութեան ջնջումը։ 1861 թ. փետրուարի 19-ին ստորագրուեց մանիֆէստը, բայց Շեվչենկօն չտեսաւ նրա հրատարակութիւնը և փետրուարի 22-ին վախճանուեց։

*Մեռնելով, նա գրեց իր բարեկամին.*

Надъ летою бездонною
Та каламутною
Благослови меня, друже,
Славою святою!.

*Եւ ճշմարիտ, չմեռաւ նրա փառքը. և երբ կը հասնեն լաւագոյն ժամանակները, կիրագործուեն մեծ մարտիրոս մարգարէի պատգամը՝*

У мене въ сімьі великій
Въ сімьі вільній новій
Не забудьте помянути
Не злимъ тихимъ словомъ.

(«Всеобщій Журналъ» Мартъ, 1911 г., № 4)

---

# Ս. ԷՋՄԻԱԾԻՆԸ ԵՒ ԻՐ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ

## (ՏՊԱՐԱՆ ԵՒ ՃԵՄԱՐԱՆ)

Հայ ժողովուրդը ներկայումս գտնվում է մի համազգային կարևորութիւն ունեցող խնդրի լուծման առաջ։ Ի՞նչպէս անել, որ անցեալի սխալները չկրկնուեն և մի ըստ ամենայնի իր կոչմանը համապատասխան, Էջմիածնի և հայ եկեղեցու իսկական շահերին լիովին հաւատարիմ, աննկուն կամքի և մտաւոր լայն կարողութիւնների տէր առաջադէմ և լուսամիտ անհատ ընտրուի Գրիգոր Լուսաւորչի գահին արժանաւոր ժառանգ։ Հայոց եկեղեցու հետ դեռ այսօր էլ անքակտելի կերպով կապուած են մնում հայ ժողովրդի այնքան կենսական շահեր, որ ոչ մի լուրջ մտածող և ողջամիտ հայ չէ կարող անտարբեր լինել դէպի առաջիկայ հայրապետական ընտրութիւնները։ Ահա այդ տեսակէտից է, որ մենք ևս, իբրև հայոց հայրապետութեան կոչմանն ու պատմութեանը ծանօթ, ինչպէս և Էջմիածնի ներկայ դրութեանն ու պէտքերին տեղեակ անձն, կը կամենայինք հայ ժողովրդի առաջ պարզել մեր ըմբռնումը և դրանով գուցէ մեր կարողութեան չափով նպաստել ազգի համար այնքան խոշոր կարևորութիւն ունեցող խնդրի աջող լուծմանը։

Այդպէս նայելով գործին, մենք ամենից առաջ անհրաժեշտ ենք համարում լաւ ծանօթացնել հայ հասարակութեանը Էջմիածնի մի քանի կարևորագոյն հաստատութիւնների և նրանց գործունէութեան հետ, որպէս զի պարզուի, թէ ինչ կայ այնտեղ, աւելի ճիշտ՝ ինչ չկայ, և ինչ է պէտք այսուհետև անհրաժեշտաբար։ Ես մի կողմ կը թողնեմ ս. Էջմիածնի բոլոր մանր մունր հաստատութիւնները, ինչպէս վանական կառավարութիւն, ագարակ, «Արարատ», մի կողմ կը թողնեմ նաև Էջմիածնի մատենադարանը, որ շատ մեծ հաստատութիւն լինելով՝ Էջմիածնում շատ փոքր բանի տեղ է անց կենում, և կը խօսեմ մանրամասնաբար միայն ս. Էջմիածնի տպարանի և ճեմարանի մասին. ոչ միայն այն պատճառով, որ երկար տա-

րինէր ծառայած լինելով նրանց մէջ՝ աւելի լաւ ծանօթ եմ նրանց գործերին ու պէտքերին, այլ նաև այն պատճառով, որ, իմ կարծիքով, ապագայ լուսամիտ հայրապետի օրով այդ հաստատութիւններին պիտի վիճակուած լինի ծանրակշիռ դեր կատարել հայ եկեղեցու եւ հայ ժողովրդի հոգեւոր-բարոյական եւ մտաւոր վերակենդանութեան մէջ։

Ես կը սկսեմ տպարանից, իբրև աւելի երկրորդական հաստատութիւնից՝ ճեմարանի համեմատութեամբ։

I

Տ պ ա ր ա ն

Հանգուցեալ Մատթէոս Բ. կաթողիկոսը երբ ժամանեց ս. Էջմիածին, պատուիրեց բոլոր հաստատութիւնների վարիչներին տեղեկագիր ներկայացնել իրան՝ գործերի ընդհանուր դրութեան մասին, որպէսզի օծումն ընդունելուց առաջ հնարաւորութիւն ունենայ մանրամասն տեղեկալու ս. Էջմիածնի անց ու դարձին, անշուշտ ապագայում սխալ կարգադրութիւններից խուսափելու համար։ Ս. Էջմիածնի տպարանի կառավարիչը այն ժամանակ երկու տարուց ի վեր անընդհատ ես էի և ինձ վիճակուեց տպարանի մասին զեկուցումն կազմելու և ներկայացնելու պարտականութիւնը։ Այդ այն զեկուցումն էր, որ հանգուցեալ հայրապետին մի փոքր ի շատէ լիակատար պատկեր էր տուել Մայր Աթոռի տպարանի մասին և դրանով գրաւել էր նրա ուշադրութիւնն ու քանիցս գոհունակութիւն և գովասանական արտայայտութիւններ խլել նրա բերանից։ Ինչ որ մի ժամանակ հանգուցեալ Մատթէոս Բ. կաթողիկոսին եմ ներկայացրել, այժմ կարող եմ նոյնը, առանց փոփոխութեան, պէտք եղած չնչին բացատրութիւններով, դնել հայ ժողովրդի և իր ապագայ ընտրեալի առաջ։ Հայ ժողովուրդը դրանով Էջմիածնի հաշուապահութեան և հոգևորականների գործունէութեան մի պարզ պատկեր կը տեսնէ իր առաջ, իսկ ապագայ ընտրեալը գուցէ օգտակար [illegible] գտնի նրա մէջ առաջարկուած միջոցներն այդ հաստատութեան բարեկարգութեան համար։

Նորին Վեհափառութեան Տ. Տ. Մատթէոս Սրբազնագոյն Կաթողիկոսի Ամենայն Հայոց

Մայր Աթոռի տպարանի տեսուչ<br>Երուանդ վարդապետ Տէր-Մինասեանից

Զ ե կ ո ւ ց ո ւ մ ն.

1907 թուականի մայիսի 7-ին ս. Սինօդի հրամանով ստանձնեցի Մայր Աթոռի տպարանի տեսչի պաշտօնը։ Ինձա-

նից առաջ նոյն պաշտօնը վարում էր Աստրախանի թեմի ժամանակաւոր կառավարիչ Տ. Մխիթար վարդապետ Տէր-Մկրտչեանը։ Երբ տպարան մտայ, կարելի է ասել, բոլորովին անծանօթ էի տպարանական գործին, ուրեմն ստիպուած էի նախ և առաջ ծանօթանալ մի կողմից տպագրական արուեստի մանրամասնութիւնների, իսկ միւս կողմից տպարանական վարչութեան գաղտնիքների հետ։ Ուրիշ խօսքով՝ որոշ հաստատուն ուղղութեամբ տպարանի գործերը անկախօրէն վարել անհնարին էր ինձ համար, մինչև ամեն նրբութեանց հետ ի մօտոյ ծանօթանալը։ Մի երկու ամիս այդպէս դիտողական վիճակ ընդունելուց յետոյ, հեշտ եղաւ ինձ համար իսկոյն ըմբռնել, որ տպարանը կառավարել այն ուղղութեամբ և ձևով, ինչպէս մինչև այն ժամանակ էր կառավարվում, անհնարին է։ Այդպիսի կառավարութեան հետևանքն էր անշուշտ, որ Մայր Աթոռը տպարանի նման մի հաստատութիւնից օգուտ ունենալու փոխարէն՝ տարեկան մի քանի հազար րուբլի վնաս էր անում, և այդ պատճառով էլ որոշել էր մի անգամ ընդ միշտ վնասից ազատուելու համար Մայր Աթոռի կուլտուրական կարևորագոյն հաստատութիւններից մէկը՝ տպարանը, փոխանակ բարեկարգելու և կանոնաւորելու, կապալով տալ։ Այդ մասին ժամանակին յայտարարուեց թէ Թիֆլիսի թերթերում և թէ հայոց հայրապետութեան պաշտօնական բերան «Արարատ» ամսագրի կազմի վրայ, որ միևնոյն ժամանակ Էջմիածնի միաբանութեան ապիկարութեան յայտարարութիւնն էր։

Որ, յիրաւի, Մայր Աթոռի տպարանը վնաս բերող մի հաստատութիւն էր դարձել, երևում է ամենապարզ կերպով 1906 և 1907 թուականի հաշիւներից, որ համառօտակի դնում ենք ստորև։

1906 թուականին տպարանը ունէր իր հաստատուն նախահաշիւը, որի համաձայն դրամ էր ստանում Սինոդից պէտքերը հոգալու համար, իսկ տպարանի եկամուտները վիճակներից անմիջական կերպով գանձվում էին Սինոդում։ Այդ թուականին ս. Սինոդը վիճակներից ստացել է, համաձայն ս. Սինոդի գանձապահի 1906 թ. ելևմտից մատենի, ի հաշիւ տպարանի եկամուտների

| | | | | |
|---|---|---|---|---|
| Յունուար ամսին՝ | 124 | ր. | 50 | կոպէկ. |
| Փետրուարին՝ | — | | — | » |
| Մարտին՝ | 1235 | » | 75 | » |
| Ապրիլին՝ | 133 | » | 25 | » |
| Մայիսին՝ | 349 | » | 75 | » |

| | | | | |
|---|---|---|---|---|
| Յունիսին՝ | 96 | ր. | — | կ. |
| Յուլիսին՝ | 870 | » | 40 | » |
| Օգոստոսին՝ | 600 | » | 91 | » |
| Սեպտեմբ. | 22 | » | 25 | » |
| Հոկտեմբերին՝ | 54 | » | — | » |
| Նոյեմբերին՝ | 265 | » | 90 | » |
| Դեկտեմբերին՝ | 758 | » | 60 | » |

Գումար՝ 4511 ր. 26 կոպէկ

(Չորս-հազար-հինգ-հարիւր-տասն-մի ր. 26 կոպ.)

Իսկ ս. Սինոդն ինքը տպարանի վարչութեանը տուել է նոյն տարուայ ընթացքում ընդամենը՝ ութ-հազար-եօթ-հարիւր տասն-վեց ր. 94 կոպ. (8716 ր. 94 կոպ.)։ Ուրեմն Մայր Աթոռի տպարանը զուտ վնաս է տուել վանքին մի տարուայ ընթացքում (1906) չորս-հազար-երկու-հարիւր-հինգ ռուբլի 68 կ. (4205 ր. 68 կոպ.)։

Նկատե՞լ է Սինոդը այդ հանգամանքը թէ՞ ոչ, յայտնի չէ ինձ. գոնէ տպարանում այդ խնդրի մասին ոչ մի գրագրութիւն չկայ։ Ուրիշ նշաններ ցոյց են տալիս, որ նկատուած չէ. 1907 թուին կրկնվում է նոյն բանը։ Այդ 1907 թուին, երբ տպարանը կառավարվում էր հին եղանակով, ս. Սինոդն ստացել է տպարանի եկամուտներից ամբողջ տարուայ ընթացքում

| | | | | |
|---|---|---|---|---|
| Յանուարին՝ | 743 | ր. | 75 | կոպ. |
| Փետրուարին՝ | 593 | » | 20 | » |
| Մարտին՝ | 786 | » | 45 | » |
| Ապրիլին՝ | 615 | » | 85 | » |
| Մայիսին՝ | 480 | » | 95 | » |
| Յունիսին՝ | 756 | » | 20 | » |
| Յուլիսին՝ | 228 | » | — | » |
| Օգոստոսին՝ | 863 | » | 95 | » |
| Սեպտեմբ. | 64 | » | 47 | » |
| Հոկտեմբերին՝ | 561 | » | 41 | » |
| Նոյեմբերին՝ | 11 | » | — | » |
| Դեկտեմբերին՝ | 499 | » | 22 | » |

Գումար՝ 6204 ր. 45 կոպ.

(Վեց-հազար-երկու-հարիւր-չորս ր. 45 կոպ.)

Իսկ ս. Սինոդը տպարանի վարչութեանը տուել է նոյն 1907 թուականի ընթացքում ինն-հազար-հինգ-հարիւր-եօթա-

նասուն-հինգ րուբլի 50 կոպէկ (9575 ր. 50 կոպ.), որով ուրեմն՝ այդ տարուայ ընթացքում տպարանը զուտ վնաս է արել երեք-հազար-երեք-հարիւր-եօթանասուն-մի ռուբ. հինգ կոպ. (3371 ր. 5 կոպ.)։

Այս ձևով տպարանի կառավարութիւնը շարունակել ի հարկէ անկարելի էր և այդ պատճառով էլ ես 1907 թուականի դեկտեմբերի 21-ին առանձին յայտարարութեամբ դիմեցի Սինոդ, որի մէջ ի միջի այլոց գրուած է. «Ս. Սինոդին պէտք է քաջ յայտնի լինի, որ տպարանի հաշիւները գտնվում են շատ անկարգ վիճակի մէջ։ Մենք այստեղից ուղարկում ենք մեզ տրուած հասցէներով 1344 օր. «Արարատ», 15,000 օրացոյց, 1508 չափաբերական մատեան, և մեր մուտքի նախահաշուի մէջ նշանակում ենք նրանց գինը լիովին։ Բայց թէ մեզ և թէ մանաւանդ ս. Ատենիդ յայտնի է, որ այդ գումարները լիովին չեն ստացվում, հոգևոր վարչութիւնների եռանդի պակասութեան պատճառով։ Բացի այդ՝ Սինոդը չգիտէ որոշ կերպով՝ մենք ում ինչ ենք ուղարկում, մենք էլ չգիտենք, թէ ով ինչ է վճարել Սինոդին։ Այդպիսով բոլորովին խառնվում են հաշիւները և մեզ մօտ ապառիկ գրուած է մնում այն, ինչ որ վճարուած է Սինոդին արդէն, և ընդհակառակը։ Նոյնպիսի անկարգ դրութեան մէջ է նաև եկեղեցական գրքերի վաճառումը։ Տպարանական վարչութեան կարծիքով՝ այդ դրութիւնը բարելաւել կարելի է միայն մի ձևով, այն է՝ պէտք է տպարանում կենտրոնացնել նրա բոլոր հաշիւները։ Սինոդը պէտք է հրամայէ բոլոր հոգևոր ատեաններին ու գործակալներին ոչ միայն փութեռանդն կերպով ժողովել նախկին տարիների ապառիկներն ու ուղարկել տպարանական վարչութեանը (ոչ Սինոդին), այլ և պէտք է խստիւ պատուիրէ բոլորին՝ թէ «Արարատի», թէ օրացոյցների և թէ չափաբերականների իւրաքանչիւր տարուայ վճարը նոյն տարուայ ընթացքում, եթէ կարելի է մինչև անգամ տարուայ առաջին կիսում, անպատճառ ժողովել և ուղարկել տպարանական վարչութեանը։ Վարչութեանս պարտականութիւնը պիտի լինի այնուհետև կանոնաւոր հաշիւ պահել, թէ ումից ինչ է ստացվում, և ս. Ատենիդ յայտնել ժամանակին զանցառուների մասին, որպէս զի վերջապէս կարգ ու կանոն մտնի թէ տպարանի հաշիւների և թէ բաժանորդագների ու վճարների ստացման մէջ։ Իսկ եկեղեցական գրքերի վճառումը պէտք է կանոնաւորել հետևեալ ձևով. մինչև 1908 թուի յունուարի վերջը բոլոր հոգևոր ատեանները պէտք է մեզ տեղեկութիւն տան, թէ ինչքան գրքեր կան իրանց մօտ և վաճառուածների արժէքը որը և ում են ու-

ղարկել։ Իսկ 1908 թ. յունուարից սկսած նրանք պէտք է տպարանին իւրաքանչիւր 3 ամիս հաշիւ տան, թէ որքան է ծախուած, և վճարները ուղարկեն մեզ»։

Ս. Սինոդը յայտնեց մեզ 1908 թ. յունուարի 23-ին, թ. 149 հրամանով, որ մեր վերև մէջ բերուած պահանջների համաձայն էլ կարգադրել է. թէև պէտք է այն էլ ասեմ, որ այդ վճիռը եկեղեցական գրքերի վաճառման համար մինչև օրս էլ անիրագործելի մնաց, որովհետև հոգեւոր ատեանները Սինոդի հրամանը չկատարեցին. բացի այդ՝ մինչև այժմ էլ հոգևոր ատեաններ են լինում (Շամախու կօնսիստօրիան, Գանձակի հոգևոր կառավարութիւնը, Նոր-Բայազէտի գործակալը և այլն), որոնք, չնայելով Սինոդի կրկնակի շրջաբերականներին, դրամը փոխանակ մեզ ուղարկելու՝ Սինոդ են ուղարկում։

Որքան նպատակայարմար էր և օգտաւէտ Մայր Աթոռի համար մեր արած առաջարկը և տպարանի կառավարութեան եղանակի փոփոխութիւնը, անմիջապէս երևաց 1908 թուականի վերջին, երբ մենք ընդհանուր հաշիւ ներկայացրինք ս. Սինոդին։ Այդ հաշուից պարզուեց, որ տպարանը 1908 թուականի ընթացքում ոչ միայն կառավարուել է իր եկամուտներով, առանց ս. Սինոդի գանձարանից դրամ ստանալու, այլ և ի հաշիւ վաստակի կարողացել է դեռ Սինոդ էլ ներկայացնել երեք-հազար-երկու-հարիւր-վաթսուն-ինն ր. երեսուն-երեք կոպէկ (3269 ր. 33 կ.), բացի դրանից անպահանջ է թողել Գէորգեան հոգևոր ճեմարանի անցեալ տարիների պարտքը, որի գումարն էր մի-հազար-հինգ-հարիւր-վաթսուն-հինգ ր. 71 կ. (1565 ր. 71 կոպ.). այլ և նոյն 1908-ի ընթացքում բերել է տուել և անմիջապէս վճարել իր եկամուտներից վեց-հարիւր-եօթանասուն-վեց ր. 95 կոպէկի նոր տառեր $10^{0}$ և $12^{0}$ մեծութեան, որ ուրիշ տարիներ տեղի ունեցած չէ։ Այդպիսով այն հաստատութիւնը, որ մի տարի առաջ հազարաւոր րուբլիներ վնաս էր հասցնում Մայր Աթոռին, 1908-ին իր հաշիւը փակեց հինգ-հազար-հինգ-հարիւր-տասն-մի րուբլի 99 կոպէկ (5511 ր. 99 կոպ.=3269 ր. 33 կ.+1565 ր. 71 կ.+676 ր. 95 կոպ.) վաստակով։ Պէտք է ի նկատի ունենալ նաև այն, որ այդ վաստակի մէջ դեռ չենք հաշւում, որ նոյն 1908 թուականի ընթացքում եկամուտներից վճարել ենք տպարանի հին պարտքերից (ոչ մեր օրով եղած) երեք-հազար-հինգ-հարիւր-իննսուն-ութ րուբլի 95 կոպէկ (3598 րուբլի 95 կոպ.)։

Ջանազանութիւնն անմիջապէս նկատելի կը լինի, եթէ Մայր Աթոռի տպարանի մի քանի տարուայ մատեանների ելքի

ու մուտքի գումարներն իրար կողքի դնենք։ Այսպէս՝

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1905 թ.-ն | մուտք եղել է | 10,281 ր. 78 կ. | ելք*) | 9,261 ր. 16 կ. |
| 1906-ին | » | 12,752 ր. 99 կ. | » | 12,540 ր. 39 կ. |
| 1907-ին | » | 14,387 ր. 22 կ. | » | 14,191 ր. 87 կ. |
| 1908-ին | » | 18,363 ր. — | » | 18,363 ր. — |

1909 թ. մատեանը առաջին կիսամեակում արդէն ունի 9931 ր. 29 կոպ. մուտք, որ երբէք եղած չէ վերջին տարիները, և ի հաշիւ եկամուտների Սինոդ է ներկայացրել արդէն 2755 ր. 60 կոպ. գումար։

Բայց այդ գումարները շատ աւելի մեծ կը լինէին, եթէ կոնսիստորիաներն ու հոգևոր կառավարութիւնները հարկաւոր փութաջանութիւնն ունենային գանձելու գոնէ 1908-ի եկամուտները, էլ չենք ասում անցեալ տարիների տասնեակ հազարների հասնող ապառիկները։ Սոյն 1909 թուականի սկզբին մենք ս. Սինոդին հաշիւ ներկայացրինք, որից երևաց, որ կոնսիստորիաները միայն 1908-ի հաշուին պարտ են մնում մեզ 8632 ր. 21 կոպ.։ Այդ պարտքը բաշխվում էր հետևեալ կերպով.

| | | |
|---|---|---|
| Երևանի կոնսիստորիան | | 4429 ր. 50 կոպ. |
| Թիֆլիսի | » | 1444 ր. 50 կոպ. |
| Ղարաբաղի | » | 1100 ր. 70 կոպ. |
| Շամախու | » | 601 ր. — |
| Աստրախանի | » | 476 ր. 91 կոպ. |
| Բեսարաբիոյ | » | 579 ր. 60 կոպ. |

Այդ 1908-ի ապառիկներից այժմ կէս տարի 1909-ից անցնելուց յետոյ՝ ի հարկէ որոշ գումարներ ստացել ենք, բայց դեռ մեծ քանակութիւն մնում է յատկապէս առաջին 4 կոնսիստորիաների վրայ, և դրա վրայ պիտի աւելանայ սոյն 1909-ի վերջին նաև ընթացիկ տարուայ ապառիկը, որով միայն վերջին երկու տարուայ ընթացքում կոնսիստորիաները 12-ից մինչև 15 հազար րուբլի պարտք կը մնան մեզ։ Ինքն ըստ ինքեան հասկանալի է, որ զօրեղ վարչութեան և փութեռանդն գործունէութեան միջոցով հնարաւոր պիտի լինի մինչև այժմ անկարելի համարուածը՝ Մայր Աթոռի տպարանի ապառիկների գանձումը։ Եթէ հնարաւոր էլ չլինի տասնեակ տարիներից մնացած ապառիկներն ամբողջովին ժողովել, գոնէ կարելի կը լինի ամենապակաս չափին վերածել այն։

---

*) Ելքի գումարների մէջ մտնում են ի հարկէ նաև տպարանի վարչութեան կողմից Սինոդ ներկայացված գումարները, որպիսի բան 1905, 1906 և 1907 թուերին տեղի ունեցած չէ։

*Բայց վերջին երկու տարին ոչ միայն անհամեմատ չափերով աւելացել են Մայր Աթոռի տպարանի եկամուտները, այլ և ծառայողների կատարած աշխատանքի չափը այլ ևս այն չէ, ինչ որ էր առաջ։ Այդ բանը պարզ կերպով երևում է հետևեալ հաշուից, սոյն 1909 թուականի յունուարի 29-ին Թ. 15 յայտարարութեամբ մատուցուած Սինոդին, խնդրելով աւելացնել ծառայողների ռոճիկը, որ սակայն Սինոդը մերժեց։ 1905 թուականի յունուարի 1-ից մինչև 1907 թուի մայիսի 1-ը, ուրեմն 28 ամսուայ ընթացքում, տպարանում կատարուել է մի-հազար-երեք-հարիւր-եօթանասուն գործ (1370), որից մօտ 470 մամուլ (16 երես) 10 քուադրատի շարուածք և տպագրութիւն։ Այն ինչ՝ 1907 թուականի մայիսի 1-ից մինչև 1909 թուականի յունուարի 1-ը, ուրեմն 20 ամսուայ ընթացքում, տպարանում կատարուած է ընդհանուր հաշուով մի-հազար-հարիւր երեսունեօթ գործ (1137), որի մէջ մօտ 432 մամուլ 10 քուադրատի վրայ շարուած և տպուած։ Համեմատական հաշիւը*) ցոյց է տալիս, որ 28 ամսուայ ընթացքում ոչ թէ 1370 գործ պիտի կատարուած լինէր 470 մամուլ շարուածքով, այլ 1662 գործ, որից մօտ 600 մամուլ շարուածք և տպագրութիւն։*

*Ինչ վերաբերում է տպարանի կառավարութեան ներքին հանգամանքներին, ամենից առաջ պէտք է յիշենք, որ տպարանը բաղկացած է հետևեալ բաժիններից.*

I. *Գրատուն.*

II. *Կազմատուն.*

III. *Ձուլարան.*

IV. *Գրաշարանոց և տպարան.*

V. *Թղթի պահեստ։*

*ա)* Գրատուն.—*Մի ընդարձակ սենեակ է, փոքրիկ նախասենեակով, որի մէջ դարսուած են Մայր Աթոռի տպարանում և Մայր Աթոռի հաշուով տասնեակ տարիներից ի վեր տպուած եկեղեցական, կրօնական և այլ բովանդակութեան բազմաթիւ գրքերը։ Ամենագլխաւոր տեղն են բռնում այստեղ ի հարկէ եկեղեցական-ժամապաշտական գրքերը (ճաշոց, շարական, ատենի ժամագիրք, գրպանի և միջադիր ժամագիրք, մաշտոց, տօնացոյց, ձայնագրեալ քաղուածք, ձայնագրեալ ժամագիրք, պատարագի արարողութիւն, զանազան դիրքերով աւետարան և այլն և այլն)։ Այդպիսի գրքեր տպելու առանձին եռանդ է*

**) Ինքն ըստ ինքեան հասկանալի է, որ այս վերջին հաշիւները միայն մօտաւոր կարող են լինել։*

ցոյց տրուած 1902 թուականից մինչև 1907 թուականը։ Առանց հաշուի առնելու, թէ որքան կարիք կայ եկեղեցական գրքեր տպելու, հազարաւոր օրինակներով տպուած, իրար վրայ, մասամբ կազմած, մեծ մասամբ անկազմ թափուած են և համարեա ամենևին չեն վաճառվում գրպանի ու միջադիր ժամագրքերը,—որոնցից առաջինը իր դիրքով ու ձևով բոլորովին անպէտք մի բան է,—տօնացոյցը, մաշտոցը, փոքրադիր աւետարանը և այլն։ Ինձ համար անհասկանալի է, թէ ինչու այդ կարճ միջոցում կարիք են զգացել այդ բոլոր գրքերը տպելու. ենթադրում եմ, որ գործ չունենալով տպարանում և անկարող լինելով դրսից օգտաւէտ գործ գտնելու, իրանց համար գործ են ստեղծել դրանից, վնաս հասցնելով Մայր Աթոռի գանձարանին։ Յատկապէս տօնացոյցը չորրորդ անգամ տպագրողները պէտք է ի նկատի առնէին, որ ատենի ժամագրքի մէջ այդ տօնացոյցն իր բոլոր մասերով տպագրուած է և ով որ ատենի ժամագիրքն ունի, առանձին տպուած տօնացոյցի կարիքն ամենևին չի զգայ այլ ևս։ Բացի այդ՝ ս. Էջմիածնի օրացոյցն այնքան ընդարձակ է կազմվում այժմ, որ բոլորովին աւելորդ է դարձնում տօնացոյցի գործածութիւնը։ Եթէ կարևոր էր տօնացոյցը կրկին տպել, առնուազն պէտք էր հոգ տանել, որ օրացոյցն այն ընդարձակութեամբ չկազմուի, ինչպէս լինում է այսօր։

Առհասարակ եկեղեցական գրքերի վաճառումը գտնվում է խղճուկ դրութեան մէջ։ Տպարանի նախկին տեսուչները սակայն իրանց նախահաշիւների մէջ համարեա միշտ մի նշանաւոր գումար նշանակել են մուտք եկեղեցական գրքերի վաճառումից։ Վերջին տարիներս սովորական են դարձել 4000 րուբլի նշանակել այդ գումարը, որպիսի գումար երբէք տպարանի կամ Սինօդի դրամարկղը մտած չէ։ Հետևելով իմ նախորդին և դեռ ևս անծանօթ իրականութեանը՝ 1908 թ. նախահաշուի մէջ ես ևս եկեղեցական գրքերի վաճառումից 4000 ր. մուտք նշանակեցի, բայց տարուայ վերջը տեսայ, որ շատ շատ եմ նշանակել։ Այս 1909-ի նախահաշուի մէջ նշանակել եմ 2500 ր., որ դարձեալ շատ է և այդքան րուբլու եկեղեցական գիրք չի ծախուի։

Որպէսզի այդ եկեղեցական գրքերը վնաս չբերեն, պէտք է, որ առաջնորդներն իրանց թեմերում շրջելիս հաւաքել տան հնամաշ, պատառոտուած գրքերը և պահանջեն նորերն առնել։ Վերջին ժամանակներս այդ ուղղութեամբ համարեա ոչինչ եղած չէ, և պէտք է առաջնորդներին պատուիրել, որ հոգ տանեն այդ

մասին։ Դրա հակառակ՝ շարունակ յետ ենք ստանում, յատկապէս վերջին օրերս Երևանի կօնսիստօրիայից, վաճառելու ուղարկուած եկեղեցական գրքերը։

բ) Կազմատուն.—Կազմատունը իսկապէս տպարանի մասն է և յատկապէս մեր տպած գրքերը կազմելու համար է հաստատուած։ Բայց կատարում է նաև բազմաթիւ մասնաւոր գործեր, ճեմարանի մատենադարանի գրքերն է կազմում, հները նորոգում և այլն։ Ունի բաւական յարմարութիւններ. Թէև կան նաև խոշոր պակասութիւններ, յատկապէս մի երկու մեքենայի, բայց այդ պակասութիւնները կարելի է առանց մեծ դժուարութեան լրացնել. և որովհետև պակաս մեքենաները կապ ունեն տպագրական արուեստի հետ, ուստի կը յիշատակուեն այնտեղ։ Զուտ կազմարարական մասը լրացնելու համար բաւական է 1500 ր. ծախսել։

գ) Ձուլարան.—Ձուլարանը մեր տպարանի ցաւոտ կողմերից մէկն է։ Պէտք է ի նկատի ունենալ, որ մեր տպարանի տառերը առհասարակ շատ հնացած են և մեծ մասամբ անպէտք։ Մեր ունեցած մայրերը, որոնցով ձուլում ենք տառերը հին ձևի ձուլիչ մեքենայի վրայ, չեն դիմանում ոչ մի քննադատութեան և պէտք է փոխուեն։ Մենք ունենք տարիներ առաջ գնուած նոր տեսակի ձուլիչ մեքենայ, որ տառը շարելու համար պատրաստ դուրս է տալիս, այն ինչ հին ձևի մեքենան դեռ ահագին ձեռքի աշխատանք է թողնում կատարելու։ Բայց այդ նոր մեքենայով մենք ձուլել կարող չենք, որովհետև նրա համար ուրիշ տեսակ մայրեր են հարկաւոր, որ մենք չունենք։ Պէտք է մի անգամ 4—5 հազար րուբլի ծախսել և բոլոր տեսակ տառերի մայրեր պատրաստել տալ, նոր ձուլիչ մեքենայով ձուլելու համար։ Այդ դէպքում տպարանը ոչ միայն կազատուի գիրք տպողների շատ անգամ իրաւացի տրտունջներից, այլ և կարող կը լինի նաև տառեր վաճառել ուրիշ տպարաններին։ Մեր այժմեան ձուլարանը նոյն ձևով պահել ոչ մի միտք չունի և, կարելի է ասել, վնաս է անում։ Եթէ ձուլիչին տրուած ռոճիկը գործադրենք նոր տառեր և տպագրութեան անհրաժեշտ պիտոյքներ գնելու, բաւականաչափ նոր տառ կարող ենք ունենալ։ Ուրեմն ձուլարանը կամ պէտք է փակել, կամ պէտք է վերանորոգել վերև յիշածս հիմունքներով, այսինքն մեծ քանակութեամբ մայրեր պատրաստել տալով։

Այս խնդրով ես դիմեցի 1907 թ. դեկտեմբերի 21-ին, թ. 230 յայտարարութեամբ, ս. Սինոդին, որ որոշել էր խնդրել Տ. Տեղակալին՝ դիմելու Պետերբուրգի Եկեղեցական Խորհրդին, որ-

պէս զի վերջինն յանձն առնէր այդ ծախքը հոգալ։ Դիմե՞ց արդեօք Տ. Տեղակալը և ի՞նչ եղաւ Նրա դիմումի հետևանքը, ինձ անյայտ է մինչև այսօր։

դ) Տպարան եւ գրաշարանոց.—*Գրաշարանոցի մասին առանձին բան չունեմ ասելու. տեղն ընդարձակ է և առողջապահական պայմանները բաւարար։ Կարևոր է միայն գրաշարանոցի և տպարանի մէջ եղած անցքը պատով փակել, որպէս զի մեքենաների աղմուկը, յատկապէս էլեկտրոմոտորի ձայնը, չխանգարէ գրաշարներին։ Առաջին յարմար առթիւ կարելի է անել այդ Ձերդ Վեհափառութեան Թոյլտուութեամբ։ Լաւ կը լինի նաև գրաշարանոցի ու կազմատան յատակը տախտակել, թէև անհրաժեշտ չէ այդ, եթէ Մայր Աթոռի նիւթականը չի ներում։*

*Գալով տպարանին, ուր գործում են երկու մեծ էլեքտրաշարժ և մի փոքր ձեռքի մեքենայ, ամենից առաջ պէտք է ուշադրութիւն դարձնել մի քանի կարևոր մեքենաների պակասութեան վրայ։ Այդ առթիւ ես 1907 թ. դեկտեմբերի 21-ի արդէն մի քանի անգամ յիշած յայտարարութեամբ դիմել եմ ս. Սինոդին հետևեալ խնդրով. «Տպարանն անհրաժեշտ կարիք ունի նաև մի քանի մեքենաների, ինչպէս հարթիչ մեքենայ (700 ր.), գիդրաւլիական ճնշիչ (3000 ր.), մի փոքրիկ տպագրիչ Աուգսբուրգի սիստեմի՝ Թերթանոց կոչուած (1200 ր.) և մի Վիկտորիա-Ամերիկանկա (1600 ր.), պատկերներ և ուրիշ գեղարուեստական գործեր տպագրելու համար։ Ընդամենը 6500 րուբլի։ Ս. Պետերբուրգի Հայոց Եկեղեցական Խորհուրդը տարիներ առաջ խոստացել է այդպիսի մեքենաներ գնել Մայր Աթոռի տպարանի համար, բայց մինչև այժմ չի կատարել իր խոստումը։ Արդեօք ս. Սինոդը հնարաւոր և յարմար չի՞ համարի դիմել կրկին նոյն Եկեղեցական Խորհրդին և խնդրել նրանից իր խոստման կատարումը»։ Այդ առթիւ ևս, որքան գիտեմ, Տ. Տեղակալը Սինոդի կողմից դիմել է Պետերբուրգի Եկեղեցական Խորհրդին. ստացուած պատասխանն ինձ յայտնի չէ։ Կը խնդրէի, որ Ձերդ Վեհափառութիւնը յատուկ ուշադրութիւն դարձնէր այդ խնդրի վրայ և յիշեալ Խորհրդին յորդորէր կատարելու իր խոստումը։*

*Բացի այդ՝ պարտք եմ համարում Ձերդ Վեհափառութեան բարձր ուշադրութիւնն հրաւիրել այն հանգամանքի վրայ, որ թէև տպարանն այժմ ունի իր էլեկտրոմոտորը, բայց շատ անգամ մեզ էլեկտրական ոյժ չեն տալիս, և մենք դարձեալ ստիպուած ենք լինում առանձին ծախս անելով՝ բանեցնել մեր*

*նաւթի մոտօրը, որը սակայն 15 տարուց աւելի է՝ բանում է և արդէն կորցրել է իր ոյժը։ Յոյս ունեմ, որ Ձերդ Վեհափառութեան կարգադրութեամբ այսուհետև մեզ անընդհատ էլեքտրական ոյժ կը մատակարարուի։ Այդ նոյն ոյժով ամառները մեր տպարանի ջրհորից մեծ քանակութեամբ ջուր է քաշվում ջրհան մեքենաների օժանդակութեամբ, որոնք տարիներից ի վեր դրուած են տպարանիս նեֆտոմոտօրի բաժնում, որով ջրվում են թէ տպարանի երկու կողմերի ծառերը և թէ ջուր է մատակարարվում պէտք եղած ժամանակ ճեմարանի բանջարանոցին։*

ե) Թղթի պահեստ.—*Թղթի պահեստի համար շինուած է առանձին գետնափոր յարկ գրաշարանոցի տակ։ Այդտեղ են դարսվում սովորաբար մեր գործածական թղթերը՝ ինչպէս «Արարատի», օրացոյցի, չափաբերականների, այլ և այլ մասնաւոր գրքերի և այլն։ Նոյն տեղումն են պահվում նաև կազմատան անհրաժեշտ պարագաները, ինչպէս կարտօն, կաշի, կալենկօր, երեսի թուղթ և այլն։ Այդ թղթի պահեստի մասին ոչինչ չէինք ունենայ ասելու, եթէ մի հանգամանք մէջ տեղ չլինէր։*

*Թղթի պահեստը մտնողի աչքին ամենից առաջ ընկնում է նրա մէջ տեղը դարսուած մօտ երեք-հարիւր-քսան օղմա «Աստուածաշնչի» կոչուած թուղթը, 3500 րուբլի արժողութեամբ։ Հանգուցեալ հայրապետը մտադրութիւն ունենալով ս. Էջմիածնի տպարանից հայ ժողովրդին Աստուածաշունչ տալ՝ հանգանակութիւն բաց արեց և, որքան ինձ յայտնի է, 14—15 հազար*) րուբլի գումար ժողովեց այդ հրատարակութեան համար։ Տարիներ շարունակ բաժանորդներն սպասում են իրանց Աստուածաշունչն ստանալու, իսկ Էջմիածնում մինչև այսօր համարեա ոչինչ արուած չէ։ Մի քանի հարիւր րուբլի (ամենաշատը 400 ր.) ծախսուած է նոր տառեր բերել տալու համար, եթէ չեմ սխալվում 1902 թուականին. բայց այդ տառերն արդէն բանեցուած են և մաշուած բոլորովին։ Ապա առնուել է մօտ 420 օղմա թուղթ, որից այսօր մնացել է 320 օղմա. մնացած մօտ 100 օղմայից 20—25-ը բանեցուած է այլ և այլ գրքերի տպագրութեան համար, իսկ 75—80 օղման,* ութ-հարիւր րուբլու *արժողութեամբ, փչացել է տպարանական նախկին վարչութեան անհոգութեան պատճառով։ Անձրևաջուրը լուսամուտներից և դռներից մտել է պահեստը և, որովհետև ոչ ոք ուշադրութիւն*

**) Զեկուցմանս մէջ յիշատակած գումարը, ինչպէս ինձ յետոյ ասացին, սխալ է։ Ժողովուած է եղել 25—30 հազար րուբլի։*

չէ դարձրել, լճացել է պատերի մօտ դարսուած՝ Աստուածաշնչի թղթի արանքներում։ Երբ ես 1907-ի մայիսին տպարանի տեսուչ կարգուեցի, առաջին անգամ պահեստ մտնելիս նեխած թղթի ծանր հոտն զգալով՝ անմիջապէս Աստուածաշնչի թղթի տեղը փոխել տուի և գտայ մօտ 80 օղմա փչացած, որ պէտք էր հանել պահեստից, դահլիճում փռել և փչացած մասերը զատել։ Այլ և այլ մանր պատուէրների համար գործադրելով առողջ մնացած մասը, կարելի եղաւ վնասի մօտ կէսը յետ բերել, բայց մնացած կէսը անդառնալի կերպով գնաց։

Արդ՝ Վեհափառ Տէր, Աստուածաշնչի համար առնուած թուղթը այդպէս երկար անօգուտ դարսելով կարող է որևէ պատճառով փչանալ։ Իսկ հայ ժողովուրդն ու յատկապէս բաժանորդները լիակատար իրաւունք ունեն Մայր Աթոռից պահանջելու՝ կամ իրանց Աստուածաշունչ տալ, կամ ստացուած դրամը վերադարձնել։ Ուստի ես, իբրև Մայր Աթոռի տպարանի տեսուչ, Ձերդ Վեհափառութեան յատուկ ուշադրութիւնն եմ հրաւիրում Աստուածաշնչի չարաբաստիկ հարցի վրայ, որի կարգաւորումը Մայր Աթոռի համար պատուոյ խնդիր պիտի լինի, որովհետև ժողովրդի վստահութիւնը ի չարը գործ դնելու իրաւունք ոչ ոք չունի, ամենից պակաս՝ ազգային հոգևոր բարձրագոյն կենտրոնի կրօնական ներկայացուցիչները։

Բացի արդէն վերև յիշուած մասերից, տպարանն ունի նաև մի մեծ դահլիճ, որ առ այժմ պարապ է և ծառայում է կարևոր դէպքերում իբրև ժողովատեղի, և մի միջակ մեծութեան սենեակ, որտեղ զետեղուած է տպարանի վարչութեան գրասենեակը։ Երկու միջանցք բաժանում են դահլիճն ու գրատունը՝ գրասենեակից, կազմատնից ու ձուլարանից և վերջիններս՝ Սուքիաս արքեպիսկոպոսի ծախքով շինուած տպարանից ու գրաշարանոցից։ Բացի դրանից՝ տպարանն ունի ճեմարանի պատին կպած իր յատուկ հողաշէն մթերանոցն ու ցախատունը։

Անցնելով բանուորութեան և տպարանական վարչութեան կազմութեան խնդրին, պէտք է նկատեմ, որ բանուորութիւնը բաժանվում է երկու մեծ խմբի. ա) գրաշարանոցի և տպարանի բանուորներ և բ) կազմարարներ։

Գրաշարանոցի ծառայողների թիւն է 10, որոնցից 5-ը հմուտ գրաշարներ են, իսկ միւս 5-ը աւելի կամ պակաս տարիներ ծառայած գրաշարի աշակերտներ։ Տպագրական մեքենաների վրայ աշխատում են երկու հոգի և գրաշարի աշակերտներից մէկը, որ աշխատում է փոքրիկ «ամերիկանկայի» վրայ։

կազմատան ծառայողների թիւն է 7, որոնցից երկուսը վարպետ են, իսկ միւսները աշակերտներ։ Բացի սրանցից ունենք մի ձուլիչ վարպետ և մի ծառայ։ Այդպիսով՝ բանուորների ընդհանուր թիւն է այս րօպէիս 21 հոգի, բացի տպարանի քարտուղարից։

Այստեղ չեմ կարող Ձերդ Վեհափառութեան բարեհաճ ուշադրութիւնը չհրաւիրել բանուորութեան դրութեան վրայ։ Որովհետև այդ բանուորների աշխատութիւնից օգտվում է Մայր Աթոռը, Մայր Աթոռն էլ պէտք է հոգ տանի նրանց նիւթական ապահովութեան մասին։ Քառասուն տարի անընդհատ Մայր Աթոռի տպարանում ծառայած գրաշարը ստանում է ամսական միայն 40 րուբլի ռոճիկ. և այդպիսի՛ն տարիներ շարունակ ծառայել է այստեղ 10 կամ 15 րուբլի չնչին ռոճիկով։ Նոր մտած աշակերտներն ստանում են 3-ական րուբլի ամսական, այն էլ 5—6 ամիս ձրի ծառայելուց յետոյ. միւսների սովորական ռոճիկն է 7, 10, 15, 20, 23, 27, 35 և այլն մինչև 40 րուբլի ամսականը, որ ստանում են 4 մեծ գրաշարները։ Սրանց բոլորի դրութիւնն էլ կարօտ է բարեփոխութեան, ո՛չ միայն ծառայութեան երկար տարիներն ի նկատի ունենալով, այլ և այն հանգամանքը, որ կենսական մթերքները տարէ-ցտարի թանգանում են, իսկ սրանց ռոճիկը երեք տարուց ի վեր նոյնն է մնացել։ Թէև երեք անգամ Սինօդ դիմեցի այս խնդրով սոյն 1909 թուականի սկզբին, բայց Սինօդը տպարանի վարչութեան խնդիրներն ու միջնորդութիւնները թողեց անհետևանք, առանց հաշուի առնելու այն հանգամանքը, որ եթէ տպարանի վարչութիւնը չի կարողանում եռանդուն կատարած աշխատութիւնը ըստ արժանւոյն վարձատրել, և այդ բանը նկատելի է դառնում բանուորութեան համար, բանուորութիւնն էլ իր կողմից անմիջապէս թուլացնում է աշխատանքը։ Եւ այդ դէպքում վարչութիւնը անզօր է դառնում որևէ բան անելու։

Իմ կարծիքով՝ տպարանի ծառայողների ապահովութեան խնդիրը պէտք է հաստատուն ձևակերպութիւն ստանայ։ Պիտի որոշուի ամենապակաս և ամենաբարձր ռոճիկը և թէ քանի՞ տարուց յետոյ յաւելումն է լինում ռոճկի վրայ։ Ես կառաջարկէի երեք տարի ծառայած աշակերտի հիմնական ռոճիկը չորրորդ տարուայ սկզբից սահմանել 10 րուբլի և այնուհետև իւրաքանչիւր 3 տարին աւելացնել 5 րուբլով մինչև ծառայութեան 35-րդ տարին, երբ այդ ռոճիկը կը հասնի իր ամենաբարձր սահմանին, որ կը լինի ամսական 60 րուբլի։ Քառասուն տարի ծառայելուց յետոյ պէտք է հանգիստ տրուի աշ-

խատաւորին, գոնէ ռոճկի կէսը նշանակելով իբրև կենսաթոշակ։ Եթէ պէտք լինի հանգիստ շնորհելու նաև աւելի պակաս տարիներ ծառայածներին, նրանց էլ պէտք է կենսաթոշակ սահմանել իրանց վերջին տարին ստացած ռոճկի կէսը։ Քսան տարուց պակաս ծառայած բանուորը իրաւունք չունի ոչ մի դէպքում կենսաթոշակի պահանջ անելու։ Ահա այն դրութիւնը, որ ես լաւ կը համարէի մտցնել Մայր Աթոռի տպարանում։ Ի հարկէ տպարանական վարչութիւնը պէտք է այնուհետև էլ լիազօրութիւն ունենայ լաւին քաջալերելու և վատին պատժելու, և դրա համար նրա ձեռքի տակ պիտի լինեն յատուկ միջոցներ։ Իսկ մինչև այսպիսի հիմնական կարգադրութիւն անելը՝ կը խընդրէի իրաւունք շնորհէիք ինձ գոնէ մի քանիսի ռոճիկներն ըստ իմ բարեհայեցողութեան աւելացնելու։

Մնում է տպարանի վարչութեան կազմակերպութեան խընդիրը։ Առաջ տպարանն ունենում էր հաստատուն «տպարանական ժողով» կոչուած վարչութիւն, որին նախագահում էր տըպարանի տեսուչը, և անդամակցում էին ուրիշ երկու միաբաններ, որոնց մէջ բաժանուած էր լինում գործը։ Բացի այդ՝ տըպարանն ունէր նաև իր յատուկ քարտուղարը և մի այլ անձնաւորութիւն էլ պետական իշխանութեան հաւանութեամբ կարգվում էր «պատասխանատու անձն» տպարանի։ Ուղիղ մի տարի է, որ տպարանական ժողով գոյութիւն չունի և ամբողջ գործը ծանրացած է ինձ վրայ, որ, բացի տպարանից, ճեմարանում էլ աբաթական 20 դաս ունէի։ Որ այդ բանը ազդեցութիւն կանէ տպարանի գործերի ընդհանուր կանօնաւորութեան վրայ, հասկանալի է ըստ ինքեան։ Մայր Աթոռի տպարանի գործունէութիւնն այնքան ընդարձակ է, որ մի անձնաւորութիւն, ինչքան էլ կարող մէկը լինի նա, չի կարող առանց պակասութեան գործն առաջ տանել։ Մի քանի անգամ այդ պատճառով բերանացի և գրաւոր դիմեցի հոգևոր բարձրագոյն իշխանութեանը, խնդրելով մէկին ինձ օգնական կարգել, բայց իմ խնդիրները չկատարուեցին։ Այս խնդրում էլ իմ կարծիքն այն է, որ եթէ Ձերդ Վեհափառութիւնը հարկ չտեսնէ կազմակերպել հին ձևով «տպարանական ժողով», գոնէ մի կարող օգնական տալ տպարանի տեսչին, բաւարար ռոճիկ նշանակել նրան՝ միանգամայն անհրաժեշտ է։

Վերջացնելով զեկուցումս չեմ կարող Ձերդ Վեհափառութեան ուշադրութիւնը չխնդրել «Արարատի» բաժանորդագրութեան խնդրի կարգաւորման վրայ։ Մայր Աթոռի տպարանի շահը պահանջում է, որ «Արարատը» կրկին պարտադիր դա-

նայ բոլոր քահանաների և դպրոցական հաստատութիւնների համար՝ իբրև պաշտօնական հրատարակութիւն։ Այն հայ քահանաները, որոնք ուրիշ ոչինչ չեն կարդում, վնաս չեն ունենայ, եթէ գոնէ «Արարատ» կարդան։ Վերջապէս հանգուցեալ հայրապետի կարգադրութեան միտքն էր ազատել խեղճ, աղքատ քահանաներին այդ պարտադիր տուրքից. այն ինչ՝ հետեւանքն այժմ այն է, որ խեղճերը հին եղանակով վճարում են, իսկ ճարպիկներն ու զօրեղներն ազատ են մնում։

Բացի դրանից՝ պէտք է խիստ պատուէր տրուի բոլոր կոնսիստորիաներին, հոգևոր կառավարութիւններին, գործակալներին և այլ եկեղեցական հաստատութիւններին, որ իրանց բըլանկներն ու մատեանները բացառապէս Ս. Էջմիածնի տպարանում տպել տան։ Դրանով Մայր Աթոռի տպարանի համար մի կարևոր մեծ եկամուտի աղբիւր կը բացուի։ Այդ մասին ես ժամանակին դիմել եմ ս. Սինոդ, որ և համապատասխան կարգադրութիւն արել է, բայց այդ կարգադրութիւնը մինչև այժմ այնքան էլ արդիւնք չէ ցոյց տալիս։

Այս զեկուցումը իմ դիտողութիւնների հետ միասին ներկայացնելով Ձերդ Վեհափառութեան բարեհաճ ուշադրութեանը, միևնոյն ժամանակ խնդրում եմ ազատ համարէք ինձ առաջիկայ սեպտեմբեր ամսի 15-ից տպարանի տեսչի պաշտօնից, կազմակերպելով նոր տպարանական վարչութիւն։

Խոնարհ որդի հոգևոր Տեառնդ՝

Տեսուչ տպարանի Մայր Աթոռոյ

Երուանդ վարդապետ Տէր-Մինասեանց

Միաբան ս. Էջմիածնի.

Ս. Էջմիածին, 16 յուլիսի 1909 թ.

Այս մանրամասն զեկուցումից յետոյ ես առանձին յայտարարութեամբ 1909 թ. սեպտեմբերի 3-ին, № 109, հանգուցեալ Հայրապետի ուշադրութիւնը խնդրեցի կրկին անգամ տըպարանի տասնեակ հազարների հասնող պարտքերի խնդրի վրայ. ցոյց տուի, որ այդ խնդրում մեծ մասամբ մեղաւոր են հոգևոր իշխանութեան ներկայացուցիչները. յայտնեցի, որ շատ պարտապաններ իրանց բերանով ինձ յայտարարել են, թէ իրանք ոչ մի կոպէկ պարտք չէին ունենայ, եթէ հոգևոր իշխանութիւնը պէտք եղած փութաջանութեամբ ժամանակին պահանջած լինէր իրան հասանելիքը. իբրև ապացոյց բերի, որ ինձ

աջողուեց 20 օրուայ ընթացքում, չափազանց աննպաստ պայմաններում (քահանաների արդիւնքների ամենավատ ժամանակը), Ալէքսանդրօպօլի աղքատ վիճակում ժողովել այդ ապառիկներից 474 րուբլի. և ի վերջոյ առաջարկեցի, որ ապառիկների գանձման խնդիրը միանգամ ընդ միշտ կանոնաւորելու համար Վեհափառ Հայրապետը բարեհաճի իր ս. Օծման առթիւ բաշխել տպարանի բոլոր ապառիկները՝ մինչև 1906 թուականի սկիզբը, խստիւ պատուիրելով մնացած բոլոր հասանելիքները շուտափոյթ գանձել և ուղարկել տպարանական վարչութեանը։

Բայց իմ բոլոր խնդիրները մնացին անկատար։ Հանգուցեալ Հայրապետը մինչև իր մահկանացուն կնքելն էլ ոչ մի կարգադրութիւն չարաւ Մայր Աթոռի տպարանի մասին, ի բաց առեալ նոր պաշտօնեաներ նշանակելը, ոչ մի ընթացք չտուեաւ իր հաւանած «զեկուցման» մէջ արտայայտուած խնդիրներից որևէ մէկին։ Իսկ ով կարող է ուրանալ, որ ուշադրութեան արժանի մի շարք խնդիրներ կային նրա մէջ, որոնք շուտափոյթ լուծումն ստանալու պէտք ունէին։

Մինչև որ Մայր Աթոռի տպարանը մի բարեկարգ հաստատութիւն չդառնայ իր բոլոր մասերով ու ելևմտական խընդիրներով, նրանից մեծ գործ սպասել հայոց ժողովրդի և եկեղեցու հոգևոր-բարոյական վերակենդանութեան համար՝ կարելի չէ։ Իսկ այդ հաստատութիւնից մեծ գործ սպասելու իրաւունք ունենք մենք, որովհետև ս. Էջմիածնի տպարանը միայն մի առևտրական ձեռնարկութիւն չէ։ Ճիշտ է, նա վնաս չպէտք է տայ Մայր Աթոռին, բայց միևնոյն ժամանակ նրա նշանակութիւնն այն չէ, որ տարեկան 3—4 հազար րուբլի օգուտ բերէ ս. Էջմիածնին։ Նա պիտի կարողանայ ինքն իրան պահել և աւելորդ վաստակ էլ ունենալ, որպէս զի իր միջոցներով նպաստէ հայոց մտաւոր ու բարոյական կեանքի զարգացմանը, ընդհանուր լուսաւորութեանն ու գիտութեանը։ Նրա կոչումն է Էջմիածինն իսկապէս «Լուսոյ Տարան» դարձնել, որտեղից լոյսն ու գիտութիւն պիտի տարածուեն հայոց ազգի խաւար մըթնոլորտում։

Ահա այս նպատակին ոյժ տալու և նրա զարգացմանը մեր կարողութեան չափով նպաստելու համար է, որ մեր բոլոր դիտողութիւնները դնում ենք սրանով հայ ընթերցող հասարակութեան և ս. Էջմիածնի ապագայ գահակալի առաջ։ Եթէ մեր գրածները գոնէ միայն առիթ ծառայեն այդ անշարժ խնդիրը շարժելու համար, մենք մեզ մեր նպատակին դրանով հասած

կը համարենք։ Որովհետև վստահ ենք, որ գոնէ այս անգամ հայ ժողովուրդը մի այնպիսի առաջնորդ կընտրէ իր գործերին ղեկավար, որ իսկապէս կը լինի լուսաւորութեան ներկայացուցիչ, և մանր ու երկրորդական խնդիրների առաջ՝ չի մոռանայ հայոց եկեղեցու և ս. Էջմիածնի մեծամեծ նպատակներն ու կոչումը։

Այսքանը բաւական համարելով տպարանի մասին, անցնենք այժմ ս. Էջմիածնի հոգևոր ճեմարանին։

ԵՐՈՒԱՆԴ ՏԷՐ-ՄԻՆԱՍԵԱՆՑ

Ալէքսանդրօպօլ, 3 մարտի 1911 թ.

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ

---

*Ալէքսանդր Մանթաշեանի մահը.—Մի նոր նուիրատուութիւն.—Խօսք և գործ.—Շիրվանզադէի յոբելեանը.—Մամուլը և փաստաբան Ս. Արծրունին՝ իբրև նրա ոխերիմ թշնամին։*

I

Ներկայ ապրիլ ամսին մեր ռուսահայերի կեանքի մէջ տեղի ունեցած գլխաւոր դէպքերն, անկասկած, կազմում են ա) կապիտալիստ-նաւթարդիւնաբերող Ալէքսանդր Յովհաննիսեան Մանթաշեանի մահը և թաղումը, որ տեղի ունեցաւ ապրիլի 30-ին, Թիֆլիսի Վանքի մայր եկեղեցու բակում, արտասովոր շուքով և հանդիսաւորութեամբ, և բ) հին-Նախիջևանցի և Արմաւիրում վերաբնակեալ Յ. Յարութիւնեանց անունով մի հայ վաճառականի խոշոր նուիրատուութիւնը (200,000 րուբլի)՝ Հին-Նախիջևանում գիւղատնտեսական դպրոց հիմնելու համար։

Ալէքսանդր Յ. Մանթաշեան կապիտալիստական աշխարհի խոշոր և ցայտուն ներկայացուցիչներից ու դէմքերից մինն էր, իսկ հայկական աշխարհում ամենահարուստ հայը, միևնոյն ժամանակ ամենախոշոր բարեգործը։ Եւ եթէ եւրօպական կապիտալիստական աշխարհում նա հռչակ էր ստացել իբրև դասակարգի խոշոր և իր առևտրական ծրագիրներով, գործունէութիւններով խիզախ և համարձակ դէմքերից մինը, հայկական աշխարհում նա հռչակուել էր գլխաւորապէս բարեգործական ձեռնարկութիւնների մէջ։ Ալ. Մանթաշեանը հասկացել էր և ըմբռնել այն ճշմարտութիւնը,—ճշմարտութիւն՝ որ թէև տարրական ու անվիճելի, բայց կապիտալիստների և հարուստների մեծագոյն մասի համար անհասկանալի և անըմբռնելի մնացած,—թէ խոշոր արդիւնաբերական ձեռնարկութիւնների տէրերը, որոնք հարստանում են շնորհիւ բանուորների աշխատութեան, բարոյապէս պարտաւոր են մասն և բաժին հանել բանուորների ճակատի քրտինքով դիզած իրանց հարստութիւնից յօգուտ հասարակական, ժողովրդական և կրթական պէտքերի, կարիքների,

կամ այլ խօսքերով՝ հատուցումն տալ մասամբ և բանուորների կարիքներին։

Ճիշտ է, Ալէքսանդր Մանթաշեանը չհանդիսացաւ հայկական Անդրէյ Կարնէջի, բայց նախ նա չունէր և Անդրէյ Կարնէջիի միլիարդաւոր հարստութիւնը, իսկ երրորդ՝ հայերի մէջ, յամենայն դէպս, իբրև բարեգործ կապիտալիստ նա առաջինն է։ Եւ ոչ մի հայ հարուստ կենդանութեան ժամանակ այնքան լայն չբացեց իր քսակը բարեգործական, ազգային և կրթական նպատակների համար, ինչպէս Ալ. Մանթեաշեանը։ Իր բարեգործութիւնները և նուէրները նա ամենից առաջ կատարում էր իբրև հայ-քրիստոնեայ և ապա իբրև մարդ։ Առաջին խոշոր նուիրատուութիւնը նա կատարեց՝ կառուցանելով իր ծախքով հայոց եկեղեցի Պարիզում, ծախսելով նրա շինութեան վրայ մի միլիօն ֆրանք, որ նրա համար, համեմատութեամբ այն ժամանակ ունեցած հարստութեան, խոշոր և մեծ զոհաբերութիւն էր։ Նրան շատ հաճելի էր, որ աշխարհիս մայրաքաղաքում, քաղաքակրթութեան և անհաւատութեան որրանում—որպիսին համարվում է Պարիզը—հայի, այն էլ հաւատացեալ և ջերմեռանդ քրիստոնեայի՝ որպիսին իրան համարում և զգում էր Մանթաշեանը, ձեռքով բարձր ի գլուխ կանգնած լինի հայկական ճարտարապետական ոճով հայկական եկեղեցի։ Երկրորդ խոշոր նուիրատուութիւնը եղաւ Թիֆլիսի Վանքի մայր եկեղեցու վերանորոգութեան համար (65,000 ր.)։ Երրորդ խոշոր նուիրաբերութիւնը եղաւ Էջմիածնի տաճարի վերանորոգութեան համար (50,000 ր.)։ Չորրորդ՝ ամենախոշոր նուիրատուութիւնն եղաւ Ներսիսեան դպրոցի նոր շէնքի կառուցման համար (250,000 ր.)։ Եւ, վերջապէս, հինգերորդ խոշորագոյն նուիրատուութիւնը եղաւ Էջմիածնում նոր կաթողիկոսարան կամ վեհարան շինելու համար (200,000 ր.)։ Եւ ուրեմն ազգային եկեղեցական կամ հոգևոր հաստատութիւնների համար Ա. Մանթաշեանը նուիրաբերեց 935,000 ր. գումար։ Ապա 665,000 ռուբլի էլ նա նուիրել է զանազան կուլտուրական, կրթական և բարեգործական նպատակներով. այսպէս օրինակ՝ 1) Առևտրական դպրոցի շինութեան համար՝ 80,000 ր., փոքրահասակ յանցաւորների կոլօնիայի շինութեան համար՝ 40,000 ր., Հայոց Դրամատիքական Ընկերութեանը մի քանի տարիների ընթացքում տրուած և տրուելի՝ 65,000 ր., Կ. Հ. Բարեգ. Ընկերութեանը՝ 20,000 ր., Նպաստամատոյց Յանձնաժողովին՝ 10,000 ր., Թոշակաւորների պահպանութեան զանազան կրթական հաստատութիւնների մէջ՝

մի շարք տարիների ընթացքում՝ 400,000 ր., և այլևայլ՝ յօգուտ աղքատների, տառապեալների՝ 50,000 ր.: Ուրեմն ընդամենը, իր կենդանութեան ժամանակ, նա տուել է 1,600,000 րուբլի: Բացի դրանից, չպէտք է մոռանալ, որ Ա. Մանթաշեան օգնութիւն է մատուցել և մեր գրողներին, օրինակ՝ Ալէքսանդր Երիցեան, Մինաս Չէրազ, Շիրվանզադէ, Գ. Պռօշեան, Արշակ Չօպանեան և ուրիշներ այս կամ այն ձևով մեծ նպաստներ են ընդունել նրանից: Նա գնել է Ալ. Երիցեանի մատենադարանը և նուիրել Էջմիածնին: Եթէ այդ նպաստները և շատ անյայտ մնացածները ևս հաշուենք ամենաքիչը՝ 200,000 րուբլի և աւելացնենք դրա վրայ այժմ կտակով բարեգործական նպատակով թողած 200,000 ր., մենք կունենանք երկու միլիօն րուբլու մի գումար, որ Մանթաշեան տուել է բարեգործական նպատակով:

Ընդունելով որ նրա թողած ամբողջ կարողութիւնը 20 միլիօն է, մենք տեսնում ենք, որ նա իր կարողութեան 10% յատկացրել է բարեգործական նպատակների: Չենք կարծում, որ հայ կապիտալիստների և հարուստների մէջ գտնուեն ուրիշներ, որոնք սրա կէսն անգամ արած լինեն:

Ընդունում ենք, որ մեզ կարող են առարկել, թէ նուիրատուութիւնների մեծ մասը գործադրուած է եկեղեցիների շինութեան կամ վերանորոգութեան վրայ. մենք գիտենք, որ կան մարդիկ, որոնք եկեղեցի կառուցանելը, տաճարներ վերանորոգելը բարեգործութիւն չեն համարում. մենք գիտենք, որ կը լինեն ասողներ, թէ այդպիսի ծախսեր Մանթաշեանը կատարում էր անձնական փառասիրութեան համար. կը լինեն առարկողներ, թէ նա ոչինչ չկատարեց յօգուտ այն հազարաւոր բանուորների, որոնց ճակատի քրտինքով դիզել է հարստութեան մի մասը: Սակայն մենք պէտք է ընդունենք Ալ. Մանթաշեանին այնպէս, ինչպէս նա կար, և մենք կը տեսնենք, որ նրա՝ յօգուտ եկեղեցիների և տաճարների տուածը ոչ թէ փառասիրութեան արդիւնք էր, այլ համոզման, անկեղծ զգացումների և հետևանք այն գաղափարի, որ նա ունէր հայութեան և ազգութեան մասին: Ալ. Մանթաշեանը հայ էր, բայց հայ-քրիստոնեայ, այսինքն մինը այն հայերից, որոնց համար հայութիւնն և եկեղեցին միևնոյն գաղափարներն են, իրարից անբաժանելի, իրար միացած և շաղկապուած. առանց եկեղեցու՝ հայութիւնը աներևակայելի էր Մանթաշեանի համար, և հայութեան գոյութիւնը, պահպանութիւնը նա եկեղեցու մէջ էր տեսնում, ուստի և հէնց Պարիզի պէս մի քաղաքում նա հայութիւնը պահպանելու, հայութիւնը ներկայացնելու միակ մի-

ջոցը համարում էր եկեղեցին։ Այդ զգացումը խոր էր նրա մէջ մինչև այն աստիճան, որ նա իր կտակով արգելում է իր զաւակներին և թոռներին՝ ամուսնանալ ոչ-լուսաւորչականի հետ։

Այդ զգացումը կարող է շատերի կողմից համակրելի չլինել, բայց նա անկեղծ է, արդիւնք խորին համոզմունքի և ոչ փառասիրութեան, ուստի և արժանի յարգանքի։

Երանի թէ մեր բոլոր հարուստները իրանց կարողութեան ոչ թէ 10, այլ $5^{0}/_{0}$-ը տային ազգային և բարեգործական նպատակներով։

Ալ. Մանթաշեան կատարեց այն, ինչ որ կարող էր։ Այո, նա աւելին կարող էր կատարել, բայց և այն, ինչ նա արաւ, իրաւունք է տալիս մեզ քաղցրութեամբ յիշելու նրա անունը և մաղթելու, որ նրա զաւակները հետևեն իրանց հօր շաւղին և լինեն հայութեան և մարդկութեան համար պիտանի, օգտակար անդամներ և հօր բարեգործութիւնների շարունակող։

## II

Կենդանութեան ժամանակ բարեգործութիւն անելը, իր սեպհական աչքով իր բարեգործութեան արգասիքը և երախտիքը տեսնելը, որ մտցրեց մեր հարուստների կեանքի մէջ Ալ. Մանթաշեանը, հետզհետէ հետևողներ է գտնում։ Ահա և մի նոր բարեգործ այդ ուղղութեամբ։ Դա հին-Նախիջևանցի Յ. Յարութիւնեանն է, որ Արմաւիրում ունեցած իր անշարժ կալուածը, արժողութեամբ 200,000 ռուբլու, նուիրում է իր հայրենի քաղաքում կամ նրա գաւառում գիւղատնտեսական մի դպրոց հիմնելու նպատակով՝ կարգադրիչ և իրագործող նշանակելով Հայ Գիւղատնտեսական և Տնայնագործական Ընկերութիւնը։ Այս նոր նուիրատւութիւնը հաճելի և մխիթարական է երկու տեսակէտով. նախ՝ նուիրատուն, մի հասարակ, պարզ և անուսում վաճառական, գրեթէ իր ամբողջ կարողութիւնը նուիրում է յօգուտ մի հաստատութեան, որ պէտք է ծառայէ գիւղացի ժողովրդի բարօրութեանը. երկրորդ՝ նա, իր այդ նպատակն իրագործելու համար, դիմում է Հայ Գիւղատնտեսական և Տնայնագործական Ընկերութեան, մի հանգամանք, որ ցոյց է տալիս, թէ այդ Ընկերութիւնը որքան էլ մատաղահաս, բայց հետզհետէ գրաւում է հայ ժողովրդի համակրութիւնը և ուշադրութիւնը։

## III

Կան ճշմարտութիւններ, որոնք, ըստ առաջին հայեացքի, թւում են լինել շատ տարրական, անհերքելի, բայց գործնական կեանքի մէջ այլ լուսաբանութիւն և գունաւորումն են ստանում։ Ամէն ոք ձեզ կասի, որ մարդուս գործը և խօսքը համընթաց պէտք է լինեն, որ եթէ մի մարդ խօսում է այլ, իսկ գործում է այլ, այսինքն ինչ որ խօսում է, քարոզում է, հակառակն է կատարում, այդպիսի մարդը արժանի չէ յարգանքի, մեծարանքի։

Սակայն, կրկնում ենք, գործնական կեանքի մէջ այդպէս չէ։

Հայ գրող Շիրվանզադէի յոբելեանի առիթով մի այլ հայ գրող՝ Լեւոն Մանուէլեան՝ «Ընկեր» շաբաթաթերթի մէջ այն միտքը յայտնեց, թէ «ես անկարող եմ անկեղծօրէն շնորհաւորել Շիրվանզադէի յոբելեանը, երբ ես անկարող եմ յարգել նրան իբրև մարդու»։

Մի կողմ թողնելով առայժմ այն հարցը, թէ որքան ճիշտ կամ անճիշտ է այդ կարծիքը, պէտք է ասել, որ Լեւոն Մանուէլեանցի կողմից հարցը դրուած է շատ կտրուկ, շատ մեկին և շատ անկեղծ. Նա գտնում է, որ երբ մի մարդ չէ կարող յարգել մի գրական կամ հասարակական գործչի իբրև մարդու, նա չպէտք է նրան մեծարանք ցոյց տայ և իբրև գործչի, որովհետև այդ մեծարանքը անկեղծ չի լինի։

Լեւոն Մանուէլեանի այդ կարծիքը առիթ է տուել Վ. Վալադեանին «Հորիզոնի» մէջ (№ 79) զարգացնել այն թէզիսը, թէ այլ է մարդը, այլ է գրողը, վիպասանը, գործիչը, թէ իբրև անհատ, իբրև մարդ՝ մի անձն կարող է յարգանքի արժանի չլինել, բայց եթէ այդ անձը տաղանդաւոր գրող է, գեղարուեստագէտ է, նրան պէտք է յարգանք, մեծարանք մատուցանել՝ իբրև գրողի, վիպասանի։ Այս մտքով ես ըմբռնեցի Վ. Վալադեանի յօդուածը։ Նա ասում է, թէ «շատ հասարակական մեծութիւններ իրանց մասնաւոր կեանքում հանդիսացել են անհատական փոքրութիւններ, ոչ համակրելի մարդիկ»։ Եւ օրինակ բերելով Գամառ-Քաթիպային, որ, իբրև բանաստեղծ, վայելել է ամբողջ հայ ազգի սէրն ու յարգանքը, բայց իբրև Ռաֆայէլ Պատկանեան, որ եղել է պասկվիլանտ, նա չի կարողացել յարգանք վայելել, Վ. Վալադեանը գալիս է այն եզրակացութեան, որ գրողի (խօսքն, ի հարկէ, տաղանդաւոր

գրողի մասին է) կամ հասարակական գործչի անհատականութիւնը, այսինքն յատկութիւնները իբրև մարդու, անհատի, մի կողմ պէտք է թողնել և յարգել նրան միայն իբրև գրողի, գեղարուեստագէտի: Ուրեմն և Շիրվանզադէն, իբրև մարդ, իբրև շամախեցի Ալէքսանդր Մովսիսեան, կարող է արժանի չը լինել ոչ մի յարգանքի, բայց մենք նրան պէտք է յարգենք իբրև գրողի:

Եթէ մենք աւելի լայն ընդհանրացումներ անենք, կարող ենք ասել, որ, ուրեմն—ըստ Վ. Վալադեանի տրամաբանութեան—մի անհատ եթէ բարոյական մտքով շատ ստոր է կանգնած, բայց մտաւոր տաղանդ է, մենք պէտք է զանցառութեան տանք նրա մարդկային, անհատական պակասութիւնները, բարոյական ախտերը և մեծարենք նրան իբրև տաղանդ, մտաւոր ոյժ:

Այս կարծիքը, իբրև սուբեկտիվ կարծիք, և վիճելի է և անվիճելի, և ընդունելի է և անընդունելի: Մենք տեսնում ենք, որ ահա կան մարդիկ, օրինակ՝ Լևոն Մանուէլեան, որոնք յայտնում են խորին համոզմունքով և անկեղծօրէն, որ եթէ դուք չէք կարող յարգել մի անձի (ներկայ դէպքում՝ Շիրվանզադէին) իբրև մարդու, ձեր նրան՝ իբրև գրողի՝ մատուցած յարգանքը կեղծ կը լինի: Բայց կան և ուրիշ մարդիկ, օրինակ՝ Վալադեանը, որոնք կարծում են, թէ մէկը կարող է իբրև մարդ արժանի չլինել ոչ մի յարգանքի, բայց իբրև տաղանդաւոր գրող՝ արժանի լինել մեծ յարգանքի:

Այս վէճը, այս հակադիր կարծիքները նոր չեն. սա այն մշտական հարցն է, որ միշտ տնկուել է մարդկութեան առաջ. սա այն պահանջն է, որ միշտ արուել է բոլոր գրողներից, քարոզողներից, բարոյախօսներից, հասարակական գործիչներից, այն է՝ խօսքին պէտք է հետեւի գործը: Այսինքն այն, ինչ որ քարոզում ես, ինչ որ խօսքով, բան ի բերանոյ յայտարարում ես, հռչակում ես, նոյնը պէտք է ցոյց տաս և գործով, կատարես կեանքի մէջ:

Բայց այս՝ ինքն ըստ ինքեան ակնյայտնի, բացարձակ ճըշմարտութիւնը միշտ լռելեայն անտեսուել, արհամարհուել է մարդկութիւնից, որի մեծամասնութիւնը կեանքի մէջ ամենևին չէ հետևել և չէ հետևում այդ նշանաբանին, թէ «ինչ որ խօսում ես, նոյնը եւ գործիր»: Եւ այդ է պատճառը, որ երբ մարդկութեան մէջ երևացել են այնպիսի դոյզնագիւտ անձնաւորութիւններ, ինչպէս՝ Բուդդա, Կոնֆուցիոս, Յիսուս, որոնք գործել են եւ կեանք են վարել այնպէս, ինչպէս քարոզել և խօսել են. Նրանք համարուել են գերմարդ, աստուած:

Քրիստոս քարոզում էր սէր դէպի բոլոր մարդիկ հաւասարապէս։ Եւ նա հաւասարապէս սիրում էր բոլոր մարդկանց. Նրա համար չկար հրէայ, հեթանոս, կռապաշտ, արդար, մեղաւոր, մաքսաւոր։ Քրիստոս քարոզում էր, որ բոլոր մարդիկ հաւասար եղբայրներ են, և Նրա համար չկար մեծատուն, տնանկ, հարուստ, աղքատ. նա չունէր սեպհականութիւն. նա իր ունեցածը բաժանում էր ամենքի հետ։

Հին և նոր պատմութեան մէջ ևս ունեցել ենք մեծ թւով անձնաւորութիւններ, որոնք իրանց կեանքը վարել են այնպէս, որ իրանց խօսքը համապատասխանել է գործին, բայց այնուամենայնիւ դրանց թիւը, համեմատաբար, շատ քիչ է եղել։

Դառնալով հայ իրականութեան, պէտք է ասել, որ մեր գործիչների, գրողների և գլխաւորապէս հրապարակախօսների մէջ յայտնի են մի քանի անձնաւորութիւններ, որոնց խօսքը և գործը միանման են եղել, որոնք իրանց գործերով իրականացրել են կեանքի մէջ այն, ինչ որ քարոզել են խօսքով։ Դրանք են՝ Խ. Աբովեան, Ս. Նազարեան, Գր. Արծրունի և Արիստակէս Սեդրակեան։ Եւ հէնց այդ պատճառով մեծ է եղել և նրանց բարոյական հմայքը, հեղինակութիւնը, որովհետև նրանց կեանքը կեղծիք չէ եղել, որովհետև նրանց միատեսակ կարելի էր յարգել և իբրև մարդու, և իբրև գործչի, գրողի։

Վերադառնալով այժմ այն առիթին, որ դրդեց մեզ խօսել խօսքի և գործի համընթացութեան մասին, այն է՝ Շիրվանզադէի յօբելեանին, որ պէտք է տօնուի մայիսի 21-ին, մենք ևս թոյլ կը տանք մեր կարծիքը յայտնել։

Յօբելեանները մի ժամանակ բացառիկ երևոյթ էին կազմում և բացառիկ, արտակարգ մեծարանք էին համարվում։ Այժմ նրանք սովորական երևոյթ են դարձել. տօնում են գրեթէ ամեն մի փոքր ի շատէ աչքի ընկնող, որևէ կերպով հասարակական, գրական, ազգային, գիտական, կրթական, քահանայական, գեղարուեստական ասպարէզում ծառայութիւն մատուցանող անձի յօբելեանը և յաճախ ընկնում են չափազանցութիւնների մէջ։ Բայց այնուամենայնիւ յօբելեանը մի ձև է, որով որևէ մի ժողովուրդ, մի հասարակութիւն, մի դասակարգ, մի խմբակցութիւն, մի կուսակցութիւն կամենում է մեծարել, գնահատել իր այս և այն գործչի կամ անդամի երկարամեայ գործունէութիւնը յօգուտ այդ ժողովրդի, հասարակութեան, դասակարգի, խմբակցութեան կամ կուսակցութեան։ Սակայն կան յօբելեաններ, որոնց նշանակութիւնը, արժէքը համազգային է, այսինքն մեծարումն մի անձի ընդհա-

նուր ազգի կողմից, որին յոբելեարը մատուցել է գնահատելի ծառայութիւններ իր տաղանդով, իր օգտակար գործունէութեամբ, գրչով, վրձինով և այլն։ Այդպիսի յոբելեաններ տեղի են ունենում ամբողջ ազգի կողմից, ինչպես եղաւ մեր մէջ Գրիգոր Արծրունու յոբելեանը։

Տօնուել են և ուրիշ յոբելեաններ՝ Պ. Սիմէօնեանցի, Պերճ Պռօշեանցի, Ղազարոս Աղայեանի և Ա. Բաբախանեանի, աւելի կամ նուազ չափով, վերջինը, դժբախտաբար, ընդունելով նոյն իսկ «Թայֆայական» բնաւորութիւն, որովհետև նա կատարուեց գլխաւորապէս ոչ թէ իբրև գրողի յոբելեան, այլ իբրև Գրիգոր Արծրունու դրօշակին դաւաճանած մի ընեեգատի յոբելեան, իբրև մի ցոյց, որ մի Թայֆայական կուսակցութիւն, որի յանցաւոր գործերը մերկացնում էր Գրիգոր Արծրունու օրգանը, կամենում է իր կարծիքով սարքած լինել այդ օրգանի՝ «Մշակի» դէմ։

Եւ ահա նկատի ունենալով այն հանգամանքը, որ Պռօշեանի, Աղայեանի, Բաբախանեանի յոբելեանները տօնուել են, մենք արդարացի ենք գտնում, որ տօնուի և Շիրվանզադէի երեսնամեայ գրական գործունէութեան յոբելեանը, թէև, անկեղծօրէն խօսելով, մենք էլ հեռու ենք յարգանք տածելուց դէպի Շիրվանզադէն, իբրև մարդու։ Բայց մի՞թէ, իբրև մարդիկ, Աղայեանը, Բաբախանեանն աւելի բարձր են եղել կանգնած. մի՞թէ նրանք էլ հաւատարիմ են մնացել այն դրօշակներին, որոնց երկրպագում էին երկար տարիներ. մի՞թէ նրանք էլ չեն տուել գաղափարների, համոզմունքների դաւաճանութեան ապացոյցներ։ Շիրվանզադէն գոնէ այն առաւելութիւնն ունի, որ նա, իբրև վիպագիր, իբրև ռէալիստ վիպագիր, իբրև գեղարուեստագէտ գրող (մենք ընդունում ենք Շիրվանզադէին միայն իբրև վիպագիր, բացառելով նրան իբրև դրամատուրգի և հրապարակախօսի) անհամեմատ աւելի բարձր է կանգնած, քան Աղայեանը և Լէօն։

Ուստի և մենք ողջունում ենք Շիրվանզադէի, իբրև ռէալիստական վիպագրի, գրական գործունէութեան երեսնամեայ յոբելեանը։

IV

Եթէ այժմ մամուլի դրութիւնը Ռուսաստանում ծանր է, եթէ այժմ մամուլը, նախկին ցենզուրայի փոխարէն, ենթարկ-

վում է վարչական և դատաստանական պատիժների, դրամական տուգանքի և դրանով միանգամայն սպանվում է, ևս առաւել ծանր է հայ մամուլի, հայ հրապարակախօսի, հայ ժուրնալիստի դրութիւնը, և այն խաչը, որ նա տանում է, բոլորովին ուժասպառ է անում նրան, որ ենթարկվում է հալածանքի նոյն իսկ այնպիսի մարդկանց կողմից, որոնց կողմից ռուսական, եւրօպական և առհասարակ քաղաքակիրթ ազգերի մամուլը ամենամեծ խրախոյս, աջակցութիւն և գնահատութիւն է գտնում։ Մեր մէջ պրօկուրօրի դերը մամուլի վերաբերմամբ աւելի թունդ, աւելի ֆանատիկոսաբար և նեղսրտօրէն վարում են և փաստաբանները, որոնցից մինը, երդուեալ հաւատարմատար պ. Սենեքերիմ Արծրունին, նորերս կայացած մի դատի մէջ ցոյց տուեց, թէ յաճախ հայ փաստաբանը որքա՜ն հեռու է էթիկայի մէջ իր եւրօպացի և ռուս կօլլեգներից։

Թիֆլիսի քահանաներից մինը, Վարդան Տէր-Ղևոնդեան անունով, հանրածանօթ իր բարոյական ֆիզիօնօմիայով իր եկեղեցու ծխականներին, դիֆֆամացիայի դատ էր սկսել «Մշակի» խմբագիր Հ. Առաքելեանի դէմ Թիֆլիսի նահանգական դատարանում։

Առհասարակ ընդունուած է, որ օրինաւոր մարդիկ, որոնք մամուլի մէջ իրանց մասին հրատարակուած որևէ աննպաստ տեղեկութիւն կամ նկարագրութիւն վիրաւորական են համարում և զուրկ ճշմարտութիւնից, եթէ՝ կամենալով վերականգնել իրանց պատիւը՝ որոշում են դատի ենթարկել յօդուածի հեղինակին կամ խմբագրին, բանում են զրպարտութեան դատ, այսինքն խմբագրին կամ հեղինակին մեղադրում են զրպարտութեան և ոչ դիֆֆամացիայի մէջ։ Եւ ահա ինչու։ Զրպարտութեան դատ սկսելով դուք ամեն տեսակ հնարաւորութեան և միջոց էք տալիս ձեզ մեղադրողին՝ հաստատել իր ասածները կամ մեղադրանքները. դուք թոյլ էք տալիս նրան վկաների ցուցմունքով ապացուցանել իր մեղադրանքները. և երբ այդ բոլորից յետոյ դատարանը մեղաւոր է ճանաչում նրան, հասարակութեան համար այլ ևս ամենափոքր կասկած չէ մնում, որ դուք միանգամայն անմեղ էք և յանիրաւի զրպարտուած։ Այդպիսով հասարակութիւնը համոզվում է, որ ձեզ վերագրուած բոլոր մեղադրանքները, արդարև, զրպարտութիւն էին, որովհետև մեղադրողին դուք տուել էիք ամեն տեսակ հնարաւորութիւն—և վկաներով, և փաստաթղթերով—հաստատել իր ասածները։ Եւ այդ ձևով շահուած դատը ձեզ համար և՛ խիստ պատուաբեր է, և՛

համոզեցուցիչ հասարակութեան համար, թէ դուք, արդարև, անմեղ էք. միևնոյն ժամանակ դատավարութիւնը ցոյց է տալիս, թէ խմբագիրը կամ հեղինակը չարամտօրէ՞ն է հնարել մեղադրանքները ձեր դէմ թէ՞ զոհ է եղել խարդախ մարդկանց ձեռքում, որոնք անձնական հաշիւներից դրդուած՝ մամուլն իրանց գծուծ շահերի համար գործիք են շինել։

Խնդիրը բոլորովին այլ կերպարանք է ստանում, երբ դուք դիֆֆամացիայի դատ էք սկսում խմբագրի կամ հեղինակի դէմ։ Դրանով դուք հէնց սկզբից ասում էք, որ ձեզ համար կարևորը, էականը ոչ թէ այն է, որ վերականգնէք ձեր աղարտուած պատիւը, բարի անունը, այլ միայն պատժէք այն յանդուգն խմբագրին կամ հեղինակին, որ համարձակուել է երևան հանել, մերկացնել ձեր արարքը, ձեր վնասակար գործունէութիւնը։ Որովհետև դիֆֆամացիայի դատի ժամանակ վկաների ցուցմունքը չէ ընդունվում, պէտք է գրաւոր դօկումենտներով, պաշտօնական փաստաթղթերով հաստատել մեղադրանքը։ Եւ ստացվում է մի տարօրինակ երևոյթ. դիցուք մի անձն յայտնի է իր անբարոյական կեանքով, նա իւրացնում է հասարակական կամ ազգային գումարներ, կատարում է կեղծիքներ, այդ ամենը կարելի է հաստատել արժանահաւատ վկաներով, որոնք առիթ են ունեցել նկատել նրա այդ վնասակար գործունէութիւնը։ Եւ ահա մի խմբագիր, մի հեղինակ, հարկադրուած ըստ իր կոչման՝ լինել արթուն պահապան հասարակական կամ ազգային շահերի, արդար զայրոյթով լի՝ մերկացնում է վնասակար անդամի անբարոյական արարքները, և վկաները, արժանահաւատ և վստահելի անձինք, պատրաստ են նոյն իսկ երդումով հաստատել մեղադրանքները։ Բայց մեղաւորը, զգալով այդ, զգալով որ ինքը պէտք է դատապարտուի, և լցուած ցանկութեամբ՝ պատժել տալու իր անբարոյական արարքները մերկացնողին, դիմում է դիֆֆամացիայի դատի օգնութեան։ Այդպիսի դէպքերում՝ հանրային շահերը իր մասնաւոր շահերից գերադասող և օրինաւոր փաստաբանը բնաւ յանձն չի առնի հանդէս գալ մամուլի դէմ։ Եւ սակայն հայ փաստաբանական ընտանիքի մէջ գտնուեց այդպիսի մէկը՝ Սենեքերիմ Արծրունին, որ յաւականութիւն ունի նոյն իսկ դասախօսութիւններ կարդալու յօգուտ ժուռնալիստների ընկերութեան, երևի արդարացնելու համար այն առածը, թէ семья не безъ урода. Եւ ամենից զզուելին այն է, որ դիֆֆամացիայի դատ սկսող Վարդան քահանայի պաշտպան Ս. Արծրունին ամեն ջանք գործ էր դնում

դատարանում, որ այն խմբագիրը, որին նա զրկել էր հնարաւորութիւնից և միջոցից բազմաթիւ վկաներով ապացուցանել իր մեղադրանքները Վարդան քահանայի դէմ, ենթարկուի ոչ թէ դրամական տուգանքի, այլ բանտարկութեան, մի պատիժ, որ չէր պահանջում նոյն իսկ պրօկուրօրը...։

Եւ այսպիսի փաստաբաններ ևս կան հայկական իրականութեան մէջ, որոնք աւելի ոխերիմ թշնամի են մամուլին, քան մամուլի իսկական թշնամիները՝ խաւարամիտները և ռէակցիօնէրները։

ՇԱՒԱՐՇ

---

# ԱԼ. ՄԱՆԹԱՇԵԱՆԻ ԴԱԳԱՂԻ ԱՌԱՋ*)

*«Ձի ուր գանձք ձեր են, անդ և սիրտք ձեր եղիցին»*

*Հոգու խռնարհութեան, մխացող վշտի բուրմունքով արձանացած կանգնած ենք այդ դագաղի առաջ, ուր Ալէքսանդր Մանթաշեան է դիակնացած։*

*Իր մահուան արագաթև սև գոյժը սաւաթոյր ամպի պէս իջաւ, փռուեց աշխարհի երեսին ցաք ու ցրիւ համատարած հայ սրտերի վրայ, ու այնտեղից վիշտն ու ափսոսանքն առուակեցին, հոսեցին ու ծովացան իր յիշատակի, իր անուան շուրջը։*

*Ծովերի ծոցից նաւաստին, ովկիանոսի ափերից ծովափնեայ բնռնակիրը, օտարութիւնից հայ պանդուխտը, գործարաններից քրտնխաշ բանուորը, համալսարաններից երախտապարտ ուսանողութիւնը, վարժարաններից աշակերտը, որբանոցներից որբերը, ամենքը վշտից դողացող շրթունքներով օրհնութեան կանաչ ոստեր, զգացմունքի փունջ-փունջ ծաղկունք փռեցին այն ճանապարհին, որի վրայով հեռու Հիւսիսից դէպի հայրենիքի սրբազան ծոցն էր վերադառնում անկենդան Մանթաշեանը։*

*Իսկ այստեղ իր կեանքի վերջին կայանում, որ պինդ սիրեց Մանթաշեանը, աշխարհաժողով են կազմել հայ ազգի ներկայացուցիչները, ծաղիկ հայութիւնը, պսակաձև բոլորելով նրա աճիւնը, դագաղը, անունն ու յիշատակը։*

*Ի՞նչ է այս ամենը. մի պատմական և հոգեբանական ճշմարտութիւն, թէ հայկական դարաստանի վրայ մահու սղոցի բերանն ընկածը հայկական մի ծառ էր, որ իր սիրոյ, իր բարութեան արմատները ամենքի սրտի մէջն էր տարածել։*

*Վաճառական էր նա, հայ վաճառականի որդի։ Դարերի*

---

**) Այստեղ, շատերի խնդրանօք, հարկ ենք համարում զետեղել Բենիկ վարդապետի՝ Թիֆլիսի Վանքի մայր եկեղեցում ապրիլ 30-ին պատարագից յետոյ արտասանած դամբանականը Ա. Մանթաշեանի դագաղի վրայ, իբրև օրինակ հռետորական բեմբասացութեան։ Խմբ.*

ընթացքում հայ վաճառականների դասը իր յատուկ դաստիարակութիւնն, իր աւանդութիւններն, իր աշխարհահայեացքն ունէր, որոնք որդէց-որդի, սրտէ ի սիրտ, բերանէ բերան էին անցնում։ Իրանց կեանքի սահմանագիծն անցնելիս՝ հայրերն իրանց որդիներին կենդանի օրինակով պատուէր էին թողնում՝ աշխատել, հարստանալ, ընտանիք, ազգ, հայրենիք պահել։ Ու հայ վաճառականի վաստակով կանգնում էին տաճարներ, փառազարդվում եկեղեցիներ, բացվում վարժարաններ, ծաղկում գեղարուեստ, պահպանվում լեզու, հաւատ, ազգային կեանք։

Իր վաստակի արդար հիմունքով հայ վաճառականն ազգային ներքին ու արտաքին կեանքի իրաւատէր գործօնն էր՝ երբև ժողովրդի և եկեղեցու կապ, հայրապետներ ընտրող, վարժարանների տնօրէն, դեսպան, միջնորդ, խնդրարկու օտարների առաջ հայ ազգի, հայոց եկեղեցու կողմից։

Հայ վաճառականութեան այս աւանդական դերն ու գործունէութեան կարևորութիւնը Ալէքսանդր Մանթաշեանը սրտով է ըմբռնել, սրտով արդիւնաւորել։

Աշխարհէ աշխարհ շրջելիս և իր հայրենիքի վրայ աչք ձգելիս նա սրտով զգաց, թէ մահուան մէջն է ապրում մեր հէգ հայրենիքը, կեանքի մէջ ամէն օր է մեռնում մեր տարաբախտ ազգը։ Եւ ահա իր կենսուրախ աչքերի մէջ ժպիտի փոխարէն արցունք ծաղկեց. աւանդական հայրենասէր հոգին խօսեց իր մէջ, և նա ձեռք զարկաւ ազգութեան խախտուած հիմերն ամրացնելու։

Ազգերը մեռնում են այն օր, երբ ազգային լեզուն է մեռնում, երբ ազգային գիտակցութիւնն է քարանում նրանց գանգի մէջ։ Հարկ էր քաջալերել հայաշունչ վարժարանը։ Եւ Մանթաշեանը իր առատ ոսկին իր սիրովը շաղախեց ու Ներսիսեան հայաշունչ վարժարանի հիմքում դրաւ այն բարձր սարի վրայ որպէս շողարձակ ճրագ՝ որ հայի հոգու խաւարը լուսաւորէ, որպէս հայ աշխարհին նոր յոյսերի աւետիք կարդացող ծիծեռնակ՝ որ հայացի է ծլվլում, որպէս փառքի տաճար՝ որ օտար փառքերի մէջ հայերին շուք է տալու։

Միայն պատերազմական ազգերը չեն, որ դրօշակ ունեն. ամենայն կենդանի ազգ, որ մեռնելու հիւանդութեամբ չի տըկարացած, իր սրբազան դրօշակն ունի, ուր իր վսեմագոյն գաղափարները, իր հաւատամքն, իր դաւանանքն է դրօշմուած։

Ըստ էութեան՝ մի կտոր ձեռագործ շոր է դրօշակը. սակայն նա մի զօրքի, ազգի սրբազան ոգևորութեան նշանն է, որին յառած են ամենքի աչքերը։ Ոչ ոք, ոչ մի ազգ դիւրութեամբ դրօշակը

ձեռքից չի տայ, դիւրագնի չի ծախի, այլ իր արեան գնով միայն. մանաւանդ թէ ոչ ոք իր սրբազան դրօշը ոտքերով առաթուր չի կոխկրտի։

Հայոց Մայր Աթոռը՝ Էջմիածինը՝ հայ ցաք ու ցրիւ ազգի սրբազան դրօշակն է ըստ էութեան, ուխտի տապանակը, միութեան կապը։ Թէև տեղ-տեղ մաշուած, թէև դրօշակակիրների թմրած բազուկներից վար կախուած իր բարձրութիւնից ու վրիպած ազգի աչքից, բայց նա մեր ազգային դրօշակն է, մեր կապը, մեր եղբայրութեան նշանը, մեր ուղեցոյցը, մեր ոգեւորութեան առարկան, որի մօտից անցնելիս՝ օտար հզօրն ու տկարը պատմական և զինուորական յարգանքի պատիւներ են տալիս հայ ազգին։

Մանթաշեանն իր սրտով ըմբռնեց ազգային խաչապսակ դրօշակի ոգևորիչ նշանակութիւնը և իր սիրով ու առատաձեռն ոսկով մօտեցաւ նրան, որ սրբի մամուռը, մաքրէ ժանգը և նորոգութեամբ փայլ տայ նրան, ու այդ փայլով ոգևորուի հայութիւնը։

Միևնոյն իմաստով է բարեգործի վերանորոգող ձեռքը շարժուել դէպի այս գողտրիկ տաճարը, որի փայլն ու փառքը Կովկասի մայրաքաղաքի հայութիւնն է վայելում։

Մեծ փորձութիւնն եկաւ ամենուրեք, որի բերան տուաւ հայութեան մի մասը և հրդեհեց հայկական գիւղ ու քաղաք, տուն ու օթևան։ Այրացաւեր երկրի սարսափահար մնացորդը մոխիր հագած աւերակների միջովն անցաւ ցաք ու ցրիւ դէպի Արևմուտք՝ իր հէգ գլուխը օտարութեան ծոցում թաղելու։

Մանթաշեան Ալէքսանդրը նոյն հայկական դրօշակը Պարիզի հայ տաճարի պատկերով կանգնեց օտար աշխարհում, ու նրա վրայ հայ բարեգործի մտքերն էին արձանագրուած. «Ա՛յ դուք խելակորոյս հայեր, հայրենի գետից ճղտուած գետակ, որ օտար ծովն ես գնում թաղելու քեզ, եկ, շուրջ ժողովուիր այստեղ քո ազգային դրօշակը». ու կանգ առան լերդապատառ փախչողներ ու սիրտ առան հայրենի դրօշակի տակ։

Այսպէս՝ Մանթաշեանը իր եւրոպական վաճառականի գլխով, իր հայկական սրտի սիրավառ ճրագով միշտ շրջում էր հայութեան մէջ. նրա աչքն ու հայեացքն հայ ազգի կարիքների վրայ էր հանգչում. հայ մանուկների համար՝ առևտրական վարժարան, հայ խաւարամած ժողովրդի համար՝ բարձր ուսումն առած մարդիկ, հայ արհեստաւորի համար՝ արհեստանոց, հայ սովեալ գաղթականին՝ հաց ու օթևան, հայ բարեգործական ընկերութեանը՝ լիաբուռն օգնութիւն, հայ ազգի վեհապետին՝ վե-

հարան, հայ բանուորին՝ գործարան, հայ թատերասիրին՝ բեմ և այլն և այլն և այլն. ահա թէ ինչ էր տեսնում Մանթաշեանի աչքը, ահա թէ ուր է դրել նա իր երկու միլիօն արծաթը. հայ հաստատութիւնների հիմքում, ուր իր սէրն ու սիրտն է դրել ու կատարել է տիրական պատուէրը. «ուր ձեր գանձն է, այնտեղ էլ ձեր սիրտը կը լինի»։

Բարեգործների լաւագոյն շարքին է պատկանում Մանթաշեանը, որ առանց յետ-մահու կտակների, իրանց կենդանութեան ժամանակն են բարիք սփռում ու բարոյական վայելքը քաղում։

Նա մտածում էր օգնութեան գալ հայոց եկեղեցուն իր ծննդավայրին արժանաւորագոյն առաջնորդ տալով, Մայր Աթոռին և իր հիմնած վեհարանին սազական արժանընտիր գահակալ ցոյց տալով։ Մահուանից առաջ ցաւ է յայտնում, որ շատ բան պիտի անէր, բայց անագորոյն մահը իր ոսկի հեքը կրծքումը խեղդեց վաղաժամ։

Ահա թէ ինչու այսօր պաշտամունք են կատարում ամենքը Մանթաշեանի շուրջը, որի պանծալի տաճարն էր հայոց աշխարհը, որի համար պատարագող քահանան՝ իր բարի գործերը, բուրվառն՝ իր սիրով խնկուած սիրտը. իր սարկաւագները հայոց հաստատութիւններ, իր փառքն ու յիշատակը երգող ու տարածող դպիրները՝ աղքատն ու թշուառ։ Եւ այդ տաճարի մէջ Մանթաշեանը իր ոսկէ սիւնին շղթայուած գերի չմնաց, այլ ոսկուց գահ շինեց ու բազմեց վրան ոսկուց բարձր մնալով ի տես Աստուծոյ և մարդկան։

Իր կեանքը խրատական էր, իր մահը երկու ճշմարտութիւն, երկու դաս պատմող՝ իր սիրասուն ու ազնուոր որդոց, իր սրտին մերձաւոր հայ վաճառականների պատուական դասին։

Թողէք որ կարդամ այդ ճշմարտութիւնները, որ Մանթաշեանի թողած հայկական հաստատութեանց ճակատն է զարդարում անգիր փորագրութեամբ։

«Հայ վաճառականնե՛ր, ձեր փառքի տունը, ուր անմահ կը մնաք, ձեր տառապեալ հայրենիքն է։ Հայոց կեանքն է այն պանտէօնը, ուր ձեր բարի յիշատակը պիտի պահուի Աստուծոյ և մարդկանց առաջ իր համակ պայծառութեամբ. ուրիշ թանգարաններում ձեզ համար միայն արհամարհանք, մոռացութիւն ու փոշի են պահուած։ Այլ ևս. հայ վաճառականնե՛ր, դուք հայ ազգի վաստակաւոր ձեռքն էք, նրա հաստատութիւններին սնունդ մատակարարող աշխատաւորը, նրա կենդանի գանձն էք ու գանձարանը. հետևաբար նրանց վրայ հսկելու, կարգադրելու,

կարգի բերելու բարոյական իրաւատէրը։ Մի՛ լսէք, մի՛ հեռանաք հայ վաճառականի աւանդական ճանապարհից, մի՛ մերժէք ձեր պարտքերն առ հայրենիք, մի՛ հրաժարուէք ձեր իրաւունքներից ազգային գործերի ղեկը ձեր ձեռքից վար թողնելով։

«Մտէք Ալէքսանդր Մանթաշեանի բռնած ճանապարհը. այդ և ձեր փառքի՛ ճանապարհն է. և եթէ յարգել էք ուզում նրան, մի՛ թողնէք, որ նրա ոսկեղէն երազները մեռնեն։ Այդ կը լինի այն լաւագոյն դրասանգը, այն անթառամ պսակը, որոնց առջև այնքան դալուկ, այնպէս վաղաթառամ են ոսկէ ու արծաթէ պսակները։ Միայն ձեր սրտերում կարող են բուսնել, ձեր ձեռքերով քաղուել ազնիւ գործերի այն ծաղիկները, որոնցով ցօղվում, փափկում է Մանթաշեանի հողէ անկողինը, թեթևանում քարէ վերմակը»։

Մարդ էր Մանթաշեանը, և մարդկային անհատական սխալմունքները անծանօթ չէին իրան։ Բայց ինչպէս հալվում ու հոսում, ինչպէս ջնջվում ու հողմավար-ցրվում են այդ սխալանքները այն մեծ գործերի լոյսի առաջ, որոնք միայն են արձանագրվում պատմութեան էջերում ոսկէ գրով։

Օրհնեա՜լ ու յաւե՜րժ յիշատակը մեծ բարեգործի։

Լռեմ և ես, ու թող մեծ խաղաղութիւնը՝ որ գիտէ առաւել խորունկ զգալ ընտիրների մահը՝ թող գայ ու փռուի Մանթաշեանի շուրջը, նրա հողաբլուրը, դամբարանը զարդարելու իր մշտախօս, բայց անձայն վշտերգով։

Թող օրհնէ նրա բարի յիշատակն ու անունը Նա, Ով պատուէր տուաւ, թէ ձեր գանձը դրէք բարութեան հիմքում, այնտեղ կը լինի և՛ ձեր սէրը, և՛ ձեր սիրտը, և՛ ձեր անմահութիւնը։

---

# Շ Տ Ր Ի Խ Ն Ե Ր

## ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ՊԱՏՎԻՐԱԿՆԵՐԻ ԸՆՏՐՈՒԹԵԱՆ ԱՌԻԹՈՎ

*Գոյնք երեւաց, քայլք ոտից*
*յայտ առնեն զմարդ։*
Ex ungue leonem, ex...

### I

*Ինչպէս յայտնի է, մայիս ամսին Վրաստանի թեմի եկեղեցիներում կատարվելու են թեմական կաթողիկոսական պատգամավորի ընտրութեան համար ծխական պատվիրակների շատ* վաղաժամ *ընտրութիւններ։*

*Անշուշտ այս անգամ էլ անցեալի նման ընտրական ասպարէզ են նետվելու այն ինքնակոչ* փրկիչները, *որոնք՝ իբր թէ հայ ժողովրդին վտանգող ներքին և արտաքին թշնամիներից փրկելու համար՝ հրապարակ են գալիս այդպիսի դէպքերում ղեկավարի դեր կատարելու և ցոյց տալու հայ ժողովրդին այն ուղին, որ տանում է դէպի փրկութիւն* только съ другой стороны, *այսինքն առաջին նշանավոր, իսկ և իսկ հայկական անմոռանալի համագումարի* պլատֆորմների *իրականացման...*

*Մենք այս յօդվածում, բերելով օրինակներ մօտիկ անցեալից, ցանկանում ենք բնորոշել որոշ տեսակի մեր ինտելիգէնտ գործիչների արարքները, որոնք ցայտուն կերպով հաստատում են, թէ ինչ արժէք կարող է ունենալ այն գործիչ-փրկիչների գործունէութիւնը, որոնք ամէն անգամ աջ ու ձախ հարայ են տալիս, թէ հայ ժողովուրդը նրանից պէտք է ընտրէ, լսէ ու հետևէ, որովհետև այլապէս* չիք փրկութիւն։

*Ով որ ուշի ուշով հետևել է վերջին տարիների ընթացքում մեր հասարակական ասպարէզի վրայ քիչ է ասել գործող, այլ ուղղակի բանի կերպով իրանց ասածները առաջ քշող որոշ տեսակի ինտելիգէնտ գործիչների գործելակերպին և նաև նր-*

րանց մտածելակերպին, անշուշտ նկատած կը լինի այն խիստ աչք ծակող և ապշեցուցիչ տարբերութիւնը, որ երևան է գալիս ամեն անգամ նրանց խօսքի ու գործի կամ այսօրվայ ու երէկվայ ասածների միջև։

Եվ մեր հասարակական գործունէութեան գրեթէ բոլոր ասպարէզների վրայ տեղի ունեցած և մինչև օրս էլ շարունակվող մի շարք տգեղ երևոյթները ծառայում են, իբրև կենդանի օրինակներ և անվիճելի փաստեր, մեր վերը յայտնած մտքի ճշմարտութեանը։

Այս էլ ավելացնենք, որ վերջին տարիները մեր ինտելիգէնտ տարրի նորագոյն տեսակից առաջացավ տնասուն գործիչների մի թայֆա, որը դարձրեց հասարակական գործունէութեան ասպարէզը մի տեսակ պատերազմի բեմ՝ գրավելու ու շահագործելու համար բոլոր հասարակական գործերն ու դրանց հետ կապված հիմնարկութիւնները յօգուտ թայֆայական նեղ գձուձ նպատակների և շահերի։

Ահա թէ ինչու մեր ինտելիգէնտ անվանվածներից շատ-շատերը դարձան թայֆայական, դրդված անձնական շահից կամ հացի խնդրի համար, իսկ եթէ նիւթապէս ապահովված էին, յարեցին թայֆային՝ փառասիրական տենչով բռնված, էժանագին ժողովրդականութիւն ձեռք բերելու և կամ հեշտ ճանապարհով հասարակական մեծանուն գործիչի տիտղոսը վաստակելու համար։

Թայֆան շատ հեշտութեամբ ի մի ձուլեց անխտիր բոլորին՝ յեղափոխականին և կղերականին, մեղվական նոր-դարականին և արմատականին, արձագանքականին և սօցիալիստին, յառաջականին և դրա բոլոր ժառանգներին, գրողին՝ բանաստեղծին, հրապարակախօսին, փիլիսօփայութեան, աստվածաբանութեան ու այլ և այլ գիտութիւնների դօկտորներին, ահաբեկիչ-դրամաշորթներին և ահաբեկիչ-կօնդակաշորթներին…

II

Այժմ դառնանք օրինակներին։

Հոկտեմբերեան մանիֆեստից յետոյ թայֆայականները լոյս աշխարհ հանեցին «Յառաջ» կարմրագոյն ոգով և ուղղութեամբ թերթը, որը շատ էր ուզում նմանվել արտասահմանեան համանուն թերթերին, սակայն յետագայում մի շարք մետամորֆօզներից յետոյ նրան ժառանգեցին տիրացուական օր-

գաններ այնպիսի ոգով և ուղղութեամբ, որ մինչև իսկ Թայֆայականներից շատերը չկարողացան հանդուրժել և տպագըրված Թռուցիկներով որակեցին այդ՝ իբրև գրական շանտաժի արդիւնք։

Մեր բազմամեայ գրական գործիչներից մէկը, որ իր գրական գործունէութեան սկզբնավորութեան օրից տասնեակ տարիներ պատսպարվել էր «Մշակում», երբ մօտեցավ նրա յոբելեանական օրը, մոռացավ ամեն ինչ, Թափ տվեց իր վրայից մշակականութեան credo-ն և յոբելեանի առավել ևս մեծ աջողութեան համար անցավ Թայֆայականների բանակը, որն այդ ժամանակ, յենված՝ բռունցքի և փափախի հեղինակութեան վրայ, ամեն տեղ հարայ-հրոց էր հանում և մարզված փղերի ոյժով իր ցանկացածը անցկացնում…

Թայֆայականները յիշեալ գրական գործչի յոբելեանը խիստ դեմօնստրատիվ կերպով կատարելուց յետոյ՝ յետագայում առօք-փառօք բազմեցրին նրան խմբագրական բազկաթոռի վրայ։ Եվ ի՞նչ։ Եկեղեցիներում քաղաքական միտինգներ գումարելու խնդրի առիթով վերոյիշեալ Նորածեփ խմբագրի մի շարք առաջնորդողները հէնց իրանց Թայֆայականներին էլ համոզեց, որ նրանց գուրգուրած և խմբագրի կոչմանը արժանացրած գրական գործիչը ոչ մշակական է եղել, ոչ էլ ընկերվարական, այլ հոգով ու մտքով կատարեալ տիրացու, որովհետև իր մի առաջնորդողում նա իրան դասեց մեղվականների և նոր-դարականների շարքը… որ արդէն բոլորովին անսպասելի էր ամենի համար։

Արդեօք ե՞րբ էր նա անկեղծ։ Ե՞րբ գրում էր «Մշակում» թէ՞ երբ անցավ Թայֆայականների բանակը և կամ թէ՝ երբ ստանձնեց խմբագրի պաշտօնը։ Ավելի ճիշտը՝ նա երբէք անկեղծ չէ եղել, որին ապացոյց՝ նրա վերջին խոստովանութիւնը վավերագրերի դեմ մեղանչելու մասին։

Մեր հասարակական յայտնի գործիչներից մէկը, որ խոշոր կուլտուրական հաստատութեան գլուխ է կանգնած, մի երկու տարի առաջ Կովկ. Հայոց Բարեգործական Ընկ. ընդհ. ժողովում, ուր առաջարկվեց ընտրել Լէօին Ընկերութեան պատվավոր անդամ, իբրև իրավաբան, հեղինակաբար յայտնեց, որ երբ մեծամասնութեամբ որոշվում է բաց քվէարկութեամբ պատվավոր անդամի ընտրութիւն կատարել, մի կամ մի քանի ժողովականի պահանջը՝ ընտրութիւնը կատարել գաղտնի քվէարկութեամբ՝ ոչ մի նշանակութիւն չունի և պարտավորեցուցիչ չէ։

Թայֆայականներին շատ դուր եկավ խորհրդի նախագահի վերոյիշեալ հեղինակաբար տված (sic) բացատրութիւնը, և նրան արժանացրին բուռն ծափերի, իսկ Լէօին էլ բաց քվէարկութեամբ ընտրեցին պատվավոր անդամ։ Յետագայում այդ նոյն նախագահը Թիֆլիսի Փոխադարձ Վարկի Երկրորդ Ընկերութեան խիստ բազմամարդ տարեկան ընդհանուր ժողովում, ուր ներկայ եղող ժողովականների ճնշող մեծամասնութիւնը առաջարկեց վերընտրել կառավարիչներից մէկին բաց քվէարկութեամբ, իսկ մի երկու ժողովական պահանջեցին գաղտնի քվէարկութիւն, կրկնում ենք, խորհրդի հեղինակավոր փաստաբան նախագահը, իբրև նախագահ Փոխադարձ Վարկի Ընկերութեան ընդհանուր ժողովի, յայտարարեց, որ եթէ մինչև իսկ մէկը պահանջէ գաղտնի քվէարկութիւն, նա, իբրև նախագահ, պարտավոր է կատարել այդ պահանջը։ Նոյնը կրկնեց նա և ներկայ տարվայ ընդհանուր ժողովում։

Արդեօք ե՞րբ էր այդ իրավաբան նախագահը անկեղծ ու շիտակ՝ Կովկ. Հայոց Բարեգործական Ընկերութեան ընդհանուր ժողովո՞ւմ թէ Փոխադարձ Վարկի Երկրորդ Ընկերութեան ժողովում։ Այս էլ ասենք, որ Թայֆայականների հոտն անգամ չէ լինում Փոխադարձ Վարկի Ընկերութեան ընդհանուր ժողովներում։

Անցեալ կաթողիկոսական ընտրութիւնների ժամանակ, երբ Թիֆլիսում տեղի էին ունենում մի շարք խորհրդակցական ժողովներ կաթողիկոսական թեկնածուների ցանկը կազմելու համար, Թայֆայական լիդերներից մի-երկուսը «բոլորովին պատահմամբ», ինչպէս նրանք յայտնեցին, ներկայ լինելով ժողովներից մի քանիսին, իբրև ընկերվարականներ, ճգնում էին համոզել, որ կաթողիկոսութիւնը անպէտք է մեր ներկայ ժամանակի համար և այլն։ Սակայն երբ նորընտիր կաթողիկոսը ժամանեց Թիֆլիս, հէնց այդ նոյն Թայֆայական լիդերները անմիջապէս վազեցին առաջնորդարան, գրկախառնվեցին ու համբուրվեցին առաջնորդի հետ, կաթողիկոսի աջը առան և հորթի նման ուրախացած՝ ժամերով տրտնգի էին տալիս առաջնորդարանում, մասնակցում փարաջայավորների ճաշկերոյթին և բաժակներ պարպում կաթողիկոսութեան յարատևութեան համար...

Արտասահմանեան համալսարանի տիտղոս կրող մի Թայֆայական ուսուցիչ, որ պատրաստ է ամեն ինչ մոռանալ, ուրանալ և ամեն պայմաններին յարմարվել, միայն թէ պաշտօն ստանայ մասնավոր, պետական, հայկական և ամեն տեսակ դպրոցներում, կազմում ու հրատարակում է աշխարհագրութեան

դասագիրք և յայտարարում, որ դասագրքում զետեղված պատկերների կլիշէները արտասահմանից են ստացված, իսկ դասագրքի մէջ բազմեցնում է հանրածանօթ հնագէտ՝ հանգուցեալ Ալէքսանդր Երիցեանի պատկերը և տակը գրում՝ Ֆրանսիացի... իբրև նմուշ, որ աշակերտները այդ պատկերով գաղափար կազմեն ֆրանսիական ազգի տիպի մասին։

Նոյն այդ տեսակի մի այլ Թայֆայական ուսուցիչ, որ արտասահմանեան համալսարանի աստվածաբանութեան դոկտորի տիտղոսն է կրում, այն աստիճան իրան երջանիկ է զգում Թայֆայի շնորհիվ ստեղծված դպրոցական պայմաններում, որ՝ ինչպէս ասում են՝ катается, какъ сыръ въ маслѣ, և թքելով թէ մասնագիտութեան և թէ այլ դպրոցական պահանջների վրայ՝ դասավանդում է ամեն բան, ինչ որ կարող է գրպանի ռուբլիների թիվը ավելացնել։ Նա դասատու է և՛ աստվածաբանութեան, և՛ աշխարհագրութեան, և՛ գերմաներէնի, և՛ հայոց լեզվի, և՛... horribile dictu քաղաքատնտեսութեան։ Իսկ երբ նրան յայտնում են, որ օրիորդաց դպրոցում քաղաքատընտեսութեան դասեր ամենևին պէտք չեն և ծրագրից էլ դուրս է, աստվածաբանութեան դոկտորը, աշխարհագրութեան և ուղղագրութեան ձեռնարկներ յօրինողը և քաղաքատնտեսութեան դասատուն հրապարակօրէն բողոքում է, յայտնելով որ այդպիսով իրան դիակ են դարձնում...

Իսկ թէ առհասարակ ինչ արդիւնք կարող է տալ արտասահմանեան աստվածաբանի թայֆայական դասավանդութիւնը, այդ շատ ցայտուն կերպով ցոյց տվեց Ներսիսեան դպրոցի բարձր դասարանի աշակերտներից մէկը, որն երրորդ գիմնազիայում բոլոր առարկաներից աջող քննութիւն տալուց յետոյ կտրվում է կրօնից (!?!), որովհետև ոչ «Հայր մերն» է իմանում, ոչ Լուսավորչի կենսագրութիւնը և ոչ իսկ Յիսուսի ծննդավայրի անունը...

Բավականանանք, ընթերցող, այսքանով։ Վերոյիշեալ տեսակի ինտելիգէնտ գործիչները հասարակութեանը մոլորեցնելու արհեստի մէջ այնքան հեռու էին գնացել, որ մինչև իսկ այդ ախտով վարակել էին Ներսիսեան և Յովնանեան դպրոցների հոգաբարձական մարմիններին, որոնք իրանց խնամքին յանձնըված դպրոցների մասին հրատարակած տեղեկագրերի մէջ փոխանակ հաղորդելու դասատու ուսուցիչների մասին, թէ նրանք համալսարանավարտ են և այս կամ այն մասնագիտութեան տէր, հասարակութեան աչքին թոզ փչելու համար՝ միմիայն

*շարել են արտասահմանեան համալսարանական քաղաքների անունները և ուրիշ ոչինչ...*

*Ահա այս տեսակի ու տիպի գործիչ-փրկիչները պէտք է առաջիկայում ասպարէզ նետվեն կաթողիկոսական ընտրութիւններին մասնակցելու համար, որպէս զի յետագայում ապագայ նորընտիր կաթողիկոսի առաջ պարծենան և իրավունք համարեն ասելու, ինչպէս մօտ անցեալումն էին անում, թէ «*մենք (sic) *ենք քեզ կաթողիկոս ընտրել, դու* մեզ *պէտք է լսես և* մեր *սամծները կատարես...»։*

Sapienti sat.

*ԿԱՂԽԱՍ*

# ՌՈՒՍԱԿԱՆ ԿԵԱՆՔ

---

Ներկայումս, երբ հաւանական է դառնում երկու մեծ՝ ռուս և չին ազգերի ընդհարումը մօտիկ ապագայում, կարևոր ենք համարում մեր այս տեսութեան մէջ տալ մի ընդհանուր պատկեր ռուսական ներքին և արտաքին կեանքի մասին թէ հին և թէ նոր՝ սահմանադրական ռէժիմի ժամանակ։

Երբ մի տէրութիւն հանդէս է գալիս քաղաքական ասպարէզի վրայ զէնքի ոյժով պաշտպանելու իր պահանջները և այդ բացարձակօրէն յայտնում է իր հակառակորդին, այդ նշանակում է, թէ նա իրան ամեն տեսակէտից ու կողմից զգում է կազմ ու պատրաստ՝ նետվելու պատերազմի բեմը, որը հանդիսանում է մի տեսակ քննութիւն պետական պատրաստականութեան և ոյժի մասին և որի հետևանքը այդ պատճառով էլ միշտ դառնում է ճակատագրական՝ պետական կազմի և մինչև իսկ նրա գոյութեան համար։

Մեր այս մտքի ապացոյց կարող են լինել հէնց մեր օրով տեղի ունեցած երկու խոշոր պատմական երևոյթները, այսինքն Եապոնիայի դասուելը առաջնակարգ պետութիւնների շարքում և ռուսական պետական կազմի փոփոխութիւնը։ Եապոնիան վերածնուելով նախ իր ռազմական ոյժը փորձեց Չինաստանի վրայ, ապա այդ աջողութիւնից աւելի ևս ոգևորուած՝ յետագայում չվարանեց ընդհարուել Ռուսաստանի հետ, որի հետևանքն եղաւ այն, որ Եապոնիան համաշխարհային պետութիւնների շարքը մտաւ և ապագայում էլ սպասվում է Եապոնիայի և Միացեալ Նահանգների ընդհարումը, իբրև համաշխարհային քաղաքական և մանաւանդ առևտրական ասպարէզի վրայ մրցող պետութիւնների։

Իսկ Ռուսաստանը։ Պատմութեան հնագոյն ժամանակներից կարելի է ասել, որ ամեն մի պատերազմ, որ նա մղել է այս կամ այն պետութեան դէմ, եղել է Ռուսաստանի համար մի տեսակ քննութիւն, շատ անաջող, այսինքն կտրվել է, ցոյց

է տուել իր անպատրաստականութիւնը, թէ ներքին և թէ այլ պայմանների վերաբերեալ, մանաւանդ անծայր տգիտութիւնն ու խաւարը, որի մէջ դարերով խարխափում է ռուս ժողովուրդը։ Ահա թէ ինչու Պետրոս Մեծը մի շարք անաջող պատերազմներից յետոյ անդառնալի կերպով ձեռք քաշեց պապական նիստ ու կացից, թափ տուեց հնութեան փոշին Ռուսաստանի վրայից և, օրինակ ունենալով Եւրոպան, մի շարք ռեֆորմներ մտցրեց, որոնք և նպաստեցին յետագայում այն փառաւոր յաղթութեան, որ ունեցաւ Մեծն Պետրոսը պօլտավեան դաշտերում երկու դար առաջ։ Հեռու չգնալու համար վերցնենք հէնց վերջին պատերազմները, որոնք տեղի են ունեցել 19-րդ դարի ընթացքում Թիւրքիայի և Ռուսաստանի միջև։ Թէպէտև Ռուսաստանը միշտ յաղթող կողմն է եղել, սակայն ո՞ւմ դէմ. Թիւրքիայի, այսինքն Ռուսաստանի հետ համեմատած մի երկրորդական, թոյլ, խաւարի ու բարբարոսութեան մէջ խարխափող պետութեան։ Ռազմագէտները վաղուց ապացուցել են, որ վերոյիշեալ պատերազմների աջողութեանը մեծապէս նպաստել է Թիւրքիայի բարբարոս վիճակը, իսկ Ռուսաստանը թէպէտև յաղթող, սակայն միշտ դատապարտելի անպատրաստականութիւն է ցոյց տուել և ո՞վ գիտէ, թէ ի՞նչ կարող էր լինել, եթէ Թիւրքիան արևելեան խոր քնից մի քիչ սթափված հանդէս գար պատերազմի բեմը, կամ թէ նրա տեղ լինէր եւրոպական առաջնակարգ պետութիւններից մէկը։

Այդպէս էլ եղաւ ռուս-ճապօնական պատերազմին, որն այնչափ աղէտաբեր էր Ռուսաստանի համար։ Սակայն ի՞նչն է պատճառը, որ շարունակաբար ամեն անգամ, երբ Ռուսաստանը գտնվում է պատերազմի նախօրեակին, կառավարութիւնը ցոյց է տալիս միմիայն իր կատարեալ անպատրաստականութիւնը և թուլութիւնը պետութեան շահերի պաշտպանութեան գործում։ Պատճառները շատ են և երկու տեսակի՝ արտաքին և ներքին։

Ինչպէս յայտնի է, ռուսական աբսօլիւտ ռէժիմի ժամանակ կառավարութեան ղեկը գտնուել է միշտ ռուս ազնուականութեան դասի ձեռքում։ Պետական գրեթէ բոլոր պաշտօնները, մանաւանդ ամենաբարձր ու կարևոր դիրքերը, գրաւած ունէին բարձր ազնուականութեան ներկայացուցիչները, որոնք և իրանց ցանկացած ուղղութիւնն ու ոգին էին ներշնչում պետական օրգանիզմին։ Ազնուականութեան դասն էր բացառապէս մատակարարում թեկնածուներ բիւրօկրատական բարձր պաշտօնների համար։ Ահա թէ ինչու ռուսական ներքին կեանքը

կրում էր իր վրայ յատկապէս ազնուականութեան դասի աշխարհահայեցողութեան կնիքը։ Ռուս ժողովրդի խոշոր զանգուածը հեռու էր իր ճակատագիրը տնօրինելու բախտից, նրան հայրաբար խրատում էին, ասելով՝ живите спокойно и богатѣйте. Այս դերն էր բարձրից վիճակուած՝ ժողովրդի համար։ Ապրիր հանգիստ, որ պետութեան անդորրութիւնը չխանգարես, և հարստացիր, որպէս զի արապութեամբ և ու անարգել վճարես քեզ համար սահմանուած պետական հարկերը։

Ֆրանսիական Մեծ յեղափոխութիւնը, ապա 48 թուականի յեղափոխութիւնը, որ բռնկեց համարեա թէ ամբողջ Եւրոպայում, այնպէս էր սարսափեցրել եւրոպական իշխող տարրերին, որոնց թւում նաև ռուս ազնուականութեանը, որ Միջին և Արևելեան Եւրոպայի պետութիւնները իրանց սրբազան պարտքըն էին համարում փոխադարձ օգնութեան գալ միմեանց, երբ վտանգ էր սպառնում ժողովրդի կողմից միահեծան աբսոլիւտ պետական կազմին։

Ահա թէ ինչու Պավել կայսրը ուղարկում է իր զօրքերը հեռաւոր Իտալիա՝ ֆրանսիական հասարակապետական զօրքերի դէմ, իսկ յետագայում Նիկոլայ Առաջին կայսրը անմիջապէս օգնութեան է հասնում իր զօրքերով՝ աւստրիական կայսեր 48 թ. ունգարական յեղափոխական շարժումները ճնշելու համար։ Եւ այդ ամենը կատարվում է յանուն միապետական, անսահման միահեծանութեան անսասանութեան պահպանման համար։ Հէնց այս վերջին նպատակով էլ ամեն միջոց և հնար էր գործ դրվում իշխող տարրերի կողմից, որպէս զի հպատակ ժողովուրդների աչքը չբացուի, թագաւորեն ամեն տեղ տգիտութիւնն ու խաւարը, իբրև միակ գլխաւոր հեցուկը աբսոլիւտիզմի անսասանութեան...

Այս դերի մէջ առանձնապէս աչքի ընկաւ 40—50-ական թուականներին Ռուսաստանը, որի զօրքերն այն ժամանակները առաջարկվում էին պրուսական թագաւորին՝ յեղափոխութեան ճնշման համար։

Միջին-եւրոպական պետութիւնները սակայն շուտով գիտակցեցին, որ անհնար է մարդկային կեանքի առաջխաղացումը կասեցնել, որովհետև, ինչպէս Ժօրէսը պնդում է, մարդկային կեանքն է մշտական պերմանենտ շարժում դէպի առաջ, և փորձել կասեցնելու այդ շարժումը՝ նշանակում է վտանգել նոյնիսկ պետութեան գոյութիւնը։

Ահա թէ ինչու միջին-եւրոպական միապետներն աստիճանաբար, թէպէտև փոքր չափով, սկսեցին զիջումներ անել

ժամանակի պահանջներին և այդ բանի շնորհիւ իրանց երկիրները նրանք հասցրին ներկայ զօրեղ և ծաղկեալ վիճակին, մինչդեռ Ռուսաստանը շարունակում էր հին քաղաքական ուղին մինչև Ղրիմի պատերազմը, որն ամեն ինչ տակն ու վրայ արաւ։ Ալէքսանդր Երկրորդ Ազատարար կայսրը Ղրիմի անաջող պատերազմից յետոյ նախաձեռնում է մի շարք բարենորոգումների, որոնք պէտք է մօտեցնէին յետամնաց Ռուսաստանը քաղաքակիրթ Եւրոպային։ Սակայն Ռուսաստանի վերածնումը ամենևին ձեռնտու չէ միջին-եւրոպական հարևան պետութիւններին։ Նախ որ, ռուս ժողովրդի օրինակին հետևելով՝ հարևան ազգերն ևս նոր պահանջներ կը դնեն, երկրորդ՝ վերածնուած Ռուսաստանը կը հանդիսանայ մի այնպիսի ահռելի ոյժ, որ սպառնալ կարող է մինչև իսկ հարևան պետութիւնների գոյութեան։ Զուր չէ ասել հռչակաւոր ռազմագէտ Մօլտկէն, թէ անցեալ պատերազմների արհաւիրքները ոչինչ են համեմատած այն պատերազմի հետ, որ բռնկելու է ապագայում գերման և սլավօն աշխարհների միջև։

Այսպէս ուրեմն՝ Ռուսաստանի վերածնութիւնը ամենևին ձեռնտու չէ միջին-եւրոպական, կամ գերման պետութիւնների շահերին։

Վերջիններս ոչ մի միջոց չեն բաց թողել, ամեն հնարագիտութիւն գործ են դրել, որպէս զի յետ պահեն հարևան Ռուսաստանը առաջադիմութեան ուղիից։ Այդ նպատակով էլ նրանք ազդել ու խրախուսել են ռուսական այն տարրերը, որոնք հանդիսանում են պահպանողական, աբսօլիւտիզմի երկրպագուներ։ Երբ Բիսմարկը Պետերբուրգում պրուսական դեսպան էր, միշտ վախեցնում էր ռուսական сфера-ները համաեւրոպական յեղափոխութեան ուրուականով։ Յայտնի է, թէ որպիսի վճռական նշանակութիւն ունեցաւ Ալէքսանդր III-ի վրայ նրա գահակալութեան առաջին օրերին գերմանական այժմեան կայսրի պապ՝ ДЯДЯ Վիլհէլմի նամակը պետական կազմի բարենորոգման վերաբերեալ։ Իսկ մօտ ժամանակները Միլիւկօվը Պետական Դումայում արտասանած իր ճառի մէջ յայտնեց, որ Բերլինի համալսարանի պրօֆեսսօր Շիմանը, որ մասնագէտ է ռուսաց լեզուի և պատմութեան կամ, ինչպէս ասում ենք, ռուսագէտ է և միևնոյն ժամանակ Վիլհէլմի ամենամօտ խորհրդատուն յատկապէս Ռուսաստանին վերաբերեալ գործերի մէջ, հրապարակօրէն լրագիրներում հաստատեց, որ առանց Վիլհէլմի կամ գերմանական դիւանագիտութեան աջակցութեան՝ Ռուսաստանում յեղափոխութիւնը չէր կարող ընկճուել։

Այժմ ընթերցողի համար մասամբ պարզ է այն, թէ որտեղից են բղխում այն դրդապատճառները, որոնք, ազդելով ռուսական իշխող տարրերի վրայ, հիմնաւորապէս բնորոշում, գունաւորում են պետական այն ուղին, որով ընթանում է լայնածաւալ Ռուսաստանը։

Եւ քանի որ վերը յիշուած թէ արտաքին և թէ ներքին դրդապատճառները ներկայումս ևս գործում են, ուրեմն և հասկանալի է մեր այժմեան տարտամ, անորոշ քաղաքական ներքին վիճակը, որը արդէն շատ է յիշեցնում նախկին ռեժիմը, չնայելով հոկտեմբերեան մանիֆէստի գոյութեան։

Ինչպէս յայտնի է, աբսօլիւտիզմի սիրահար տարրերն ու երկրպագուները փայփայում են միշտ իմպերիալիստական երազանքներ. նուաճողական քաղաքականութեան և պատերազմների շնորհիւ պետութեան սահմաններն ընդարձակելու ձգտումը շատ ձեռնտու է նրանց, որոնք ուզում են ժողովրդի միտքն ու հոգին դարձնել այլ կողմ՝ զբաղեցնելով պատերազմի «փառապանծ» գործերով... Սակայն այդ միջոցը երկսայրի սուր է։

Հէնց այդ նպատակով էլ առաջ բերին ռուս-եապօնական պատերազմը, որը բոլորովին հակառակ հետևանք ունեցաւ։ Ինչո՞ւ։ Որովհետև աբսօլիւտիզմը միշտ բարձի-թողի է անում ժողովրդի շահերը և միմիայն ի նկատի առնում իշխող տարրին։ Դրա արտաքին զօրութիւնն, ապահովութիւնն և երևութական ոյժը մոռացնել է տալիս ամեն ինչ և այն աստիճան կուրացնում բիւրօկրատ տարրին, որ սա սկսում է երևակայել իրան անյաղթելի, ամենահզօր մի ոյժ։ Այս մեր ասածը հաստատում է պատմութիւնը։ Նապօլէօն III-ի քծնողներից մէկը՝ զինուորական մինիստր մարշալ Լըբեօֆը, ֆրանս-պրուսական պատերազմի նախօրեակին՝ պարլամենտում ձախակողմեան պատգամաւորների հարցապնդմանը՝ թէ արդեօք զօրքը պատրաստ է պատերազմի համար, գոռոզներին սազող մեծամտութեամբ պատասխանեց, թէ ֆրանսիական զինուորը մինչև վերջին կօճակը պատրաստ է։ Երբ պրուսական զինուորները զարմանալի անվեհերութեամբ սահմանը նոր անցած բարձրանում էին Շպիխէրն կոչուող բարձունքների վրայ, ուր ամրացել էր ֆրանսիական զօրքը, գեներալ Ֆրուասարը, զօրքի հրամանատարը, վրանում անդորր նստած շամպայնի շիշեր էր պարպում և դիտելով պրուսական զօրքի առաջխաղացումը՝ ցաւակցելով մեծամտաբար ասում էր՝ «խեղճ պրուսացիք»։ Խղճացող գեներալը շուտով ստիպուած եղաւ այնպիսի արագութեամբ փախուստ

տալ, որ գեներալի վրանը և շամպայնը մնացին ի վայելումն պրուսական զինուորների։

Երբ բռնկեց ռուս-ճապոնական պատերազմը, շատերը այն կարծիքի էին, թէ բաւական է մինչև իսկ ռուս դվորնիկի մահակը՝ ճապոնացուն յաղթելու համար։

Սակայն, ինչպէս երևում է, մարդկութեանը հարկաւոր են շատ դառն փորձեր, ուղղակի աղէտներ, համոզելու համար որ առանց ազատութեան, գիտութեան ու լոյսի՝ չկայ փրկութիւն։

Մենք այդ տեսակ աղէտ ենք համարում նաև ռուս-չինական պատերազմի ուրուականը։ Չպէտք է մոռացութեան տալ այն հանգամանքը, որ ամենահնագոյն ժամանակներից չինական այժմեան երկիրներն են եղել այն վայրերը, որտեղից Եւրոպա են արշաւել անթիւ անհամար հրոսակային հորդաները, աւերել և մոխիր դարձրել եւրոպական քաղաքակրթութեան պտուղները։ Եւրոպական քաղաքակիրթ ռազմական ոյժերը անզօր են գտնուել դիմադրելու կիսավայրենի հորդաներին, որոնք երևացել են Մօնղօլիայի և Թուրքեստանի դաշտավայրերից։

Մաղթենք, որ գործը չհասնի պատերազմի և յաղթողը լինի խաղաղութիւնը, որ այնքան անհրաժեշտ է թէ Ռուսաստանին և թէ Չինաստանին ի մեծ երջանկութիւն երկու հարևան մեծ ժողովուրդների։

—

Մօտենում է օրէնսդրական մարմինների նստաշրջանի փակման ժամանակը։ Այս նստաշրջանը շատ նշանակալից է նախկիններից նրանով, որ թէ Պետական Խորհուրդը և թէ Դուման ճնշող մեծամասնութեամբ ընդունեցին այն բանաձևը, որով Ստօլիպինի անցկացրած զեմստվօյի նախագիծը Արևմըտեան նահանգների համար 87-դ յօդուածի հիման վրայ համարում են ոչ-օրինական ձևով կատարուած։ Այս բանին պէտք է հետևէ կամ մինիստրութեան հրաժարականը, կամ օրէնսդրական մարմինների արձակումը։ Ահա այն տարօրինակ և անսպասելի կացութիւնը, որի մէջ գտնվում է ներկայումս կառավարութիւնը, որը չէ ցանկանում ոչ հրաժարական տալ, ոչ էլ Դուման և Խորհուրդը արձակել։ Շատ հետաքրքրական է պարզել, թէ ինչպէս և ինչ պատճառներից առաջացաւ կառավարութեան ներկայ աննախանձելի դրութիւնը և թէ ինչ վախճան է ունենալու։ Սակայն այդ մասին հետևեալ անգամ։

ԿԱԼԽԱՍ

# ԱՐՏԱՍԱՀՄԱՆԵԱՆ ԿԵԱՆՔ

## ԻՏԱԼԻԱ

*Երիտասարդ Իտալիան տօնում է իր քաղաքական անկախութեան յիսնամեակի յոբելեանը մեծ ոգևորութեամբ և ցնծութեամբ։ Բացի զանազան տօնախմբութիւններից, որոնք շարունակ յաջորդում են իրար այս ապրիլ ամսից սկսած և տևելու են մինչև Նոյեմբեր ամիսը, բացի բազմաթիւ կօնգրէսներից, որոնք գումարվում են Հռոմում և դեռ գումարուելու են, ինչպէս մամուլի կօնգրէսը, խաղաղութեան կօնգրէսը և ուրիշ գիտնական կօնգրէսներ, Իտալիան իր ազգային մեծ տօնը ողջունում է ցուցահանդէսով, որ պէտք է ցոյց տայ քաղաքակիրթ աշխարհին, թէ երիտասարդ պետութիւնը 50 տարուայ ընթացքում որպիսի ահագին առաջադիմութիւն է գործել գիտութիւնների, գեղարուեստների և արուեստների մէջ։*

*
* *

## ԹԻՒՐՔԻԱ

*Նոր, սահմանադրական Թիւրքիան դեռ շատ հեռու է իր գոյութիւնը ամրապնդելու իրողութիւնից։ Եւ դրա պատճառն այն չէ, որ անշարժ և անմշակ մահմեդական ազգաբնակութիւնը չէ կարողանում գնահատել նոր իրաւական կազմը հին կազմի առաջ, բայց գլխաւորապէս յեղաշրջումն առաջ բերող երիտասարդ-Թիւրքերի մեղաւորութեան պատճառով, որոնք ի նկատի չունեցան իսլամ կրօնը դաւանող տասնեակ միլիոնաւոր մարդկանց դարաւոր կրօնական հայեացքները, իսլամ կրօնը, որ կազմում է օսմանեան կայսրութեան գլխաւոր հեցուկը։*

*Երիտասարդ-Թիւրքերը, որոնց ձեռքին է գտնվում այժմ իշխանութիւնը, րէֆօրմների հետ մտցրին խալիֆների երկրի մէջ մի աւելի խոր ու ուժեղ երկպառակութիւն, պառակտումն, քան անհամաձայնութիւնը քաղ սքական և տնտեսական հարցե-*

*րի մէջ, այն է՝ կրօնական և ազգայնական երկպառակութիւն, անջատականութիւն։*

*Մի քիչ աւելի մանրամասն քննենք այդ հարցը։*

*Երիտասարդ-թիւրքերի կարճատեսութիւնը, քաղաքական հոտառութիւնից զուրկ լինելու հանգամանքը, այսօր դարձել է նրանց համար պատուհաս։ Սահմանադրութեան վերհռչակումից յետոյ, «Մ. և Ա.» կուսակցութիւնը, որի ձեռքն անցաւ* de facto *երկրի կառավարութեան ղեկը, չդիմեց ամենակտրուկ միջոցների հին ռէժիմի պաշտօնեաներին պաշտօնանկ անելու, նրանց սանձելու համար։ Այլ, ընդհակառակը, թողնելով նրանց իրանց պաշտօնների մէջ, նոյն իսկ հաւատ ընծայեց Համիդի շնորհիւ յղփացած պաշտօնեաների սահմանադրական լինելու հաւաստիացումներին և, մոգական գաւազանի հարուածով նրանց արդէն սահմանադրականացած համարելով, ընդունեց կուսակցութեան շարքերի մէջ։ Ահա այդպիսի օպորտիւնիստ և վնասակար պաշտօնեաների շնորհիւ էր, որ տեղի ունեցաւ Ադանայի և շրջանի հայերի սոսկալի ջարդը. Նրանց սարքած ինտրիգների արդիւնքն էին նմանապէս Արաբիայի և Ալբանիայի ապստամբութիւնները՝ գլխաւորապէս. ապստամբութիւններ, որոնք շատ թանգ նստեցին Թիւրքիային և որոնք ապացուցեցին, որ երիտասարդ-թիւրքերը առհասարակ թոյլ վարչագէտ-քաղաքագէտներ են։*

*Ակներև է, որ յետադիմական պաշտօնեաների նպատակն էր այսօրինակ գրգռումներ առաջացնելով՝ ցոյց տալ արար-աշխարհին, որ երիտասարդ-թիւրքերի հաստատած սահմանադրական կարգն ու սարքը վնասակար է, իսկ իրանք հեղինակները անկարող և անընդունակ են երկիրը խաղաղեցնելու գործում։ Իսկ թէ ինչու համիդականներն այսպէս վարուեցին, այդ դիւրին հասկանալու մի խնդիր է։*

*Նրանք դրանով ուզեցին երկրի ամբողջ ղեկը յետագայում կրկին իրանց ձեռքը գցել, որի ցայտուն ապացոյցը կարող է լինել մարտի 31-ի հակայեղափոխութիւնը, երբ հին-թիւրքերը առիթից օգտուելով ուզեցին* coup d'état *(յեղաշրջում) առաջացնել, թէև չաջողեցին։ Երիտասարդ-թիւրքերը հէնց սկզբում չզսպելով հին-թիւրքերին, բացի վերոյիշեալներից, հնարաւորութիւն տուին համիդականներին խլրտումներ առաջացնելու Թիւրքիայի այլևայլ վայրերում սահմանադրական կարգերի դէմ, որի զոհերն եղան առհասարակ քրիստոնեաները և մանաւորապէս Հայաստանի հայ ժողովուրդը։*

*Սրան իբրև ապացոյց թող ծառայի այն, որ Հայաստա-*

նում բնակւած քիւրդերը դեռ մինչև այսօր էլ չեն անսում կառավարութեան հրահանգներին, չեն վերադարձնում Աբդիւլ-Համիդի օրօք հայերից խլած հողերը, տները, այգիները և այլն, այլ ընդհակառակն՝ դեռ ևս շարունակում են բողոքող հայերին ոչխարների նման մորթոտել անպատիժ կերպով։ Երիտասարդ-Թիւրքերի խոշորագոյն սխալներից մէկն ևս այն էր, որ իրանք, այսինքն զուտ Թիւրքական ծագում ունեցող ազգաբնակութիւնը, փոքրամասնութիւն կազմելով ամբողջ երկրի մէջ՝ ուզեցին իրանց քմահաճոյքի համաձայն տնօրինել բազմաթիւ և բազմամիլիոն օտարացեղ հպատակների բախտն ու վիճակը, որով, փոխանակ նրանց համակրանքը գրաւելու, աւելի ևս սուր յարաբերութիւններ ստեղծեցին, որպիսի հանգամանքը պարզելու համար գոհացուցիչ կը լինի, եթէ յիշատակենք Մակեդոնիայում օրէ-ցօր ուժեղացող ազգային ոգի կրող շարժումները, Կրետէի և յոյների դժգոհութիւնները և այլն։

Ամեն կասկածից դուրս է, որ հայերն ևս դժգոհ են երիտասարդ-Թիւրքերի ազգայնական քաղաքականութիւնից, չնայած որ «Դաշնակցութիւն» կոչւած խմբակցութիւնը, գործիք դառնալով «Մ. և Ա.» կուսակցութեան ձեռքում, Պարիզում կայացրած մի խայտառակ «համերաշխութեան» շնորհիւ, մատների արանքից էր նայում հայերի դէմ շարունակուող հալածանքների վրայ, սակայն որպիսի հանգամանքը մազաչափ անգամ չկասեցրեց այն, որ Թիւրքահայերի մէջ գործող միւս խմբակցութիւնները, այսինքն՝ Սահմանադիր-Ռամկավարական և Ս. Դ. Հնչակեան կուսակցութիւնները առհասարակ դժգոհ լինէին դաշնակցականների դաշնակից երիտասարդ-Թիւրքերից և իւրաքանչիւր պատեհ առիթին իրանց բողոքները լսելի դարձնէին։ Երիտասարդ-Թիւրք կառավարութիւնը պարտաւոր էր ոչ միայն օտարազգիների առանձնաշնորհումներին ձեռք չտալ, այլ և նոյն իսկ նա պիտի տար նրանց ներքին, ազգային ինքնատնօրինութեան լայն իրաւունքներ։

Բայց նա այդ չարաւ, այլ ընդհակառակն աշխատեց նրանց իրաւունքները կրճատել, յանուն փոքրամասնութիւն կազմող Թիւրք տարրի, որի շնորհիւ էլ դժգոհութիւնների առիթ տուեց, որից օգտուեցին հին-Թիւրքերը և, որտեղ կարող էին, պրովօկացիոն միջոցներով օտարազգի տարրերին յարուցին նոր րէժիմի դէմ։

Ոչ մի կուլտուրական պետութեան մէջ խօսք անգամ չէ կարող լինել այս կամ այն ազգի առանձնաշնորհումների մասին, բայց այդ միևնոյնը չէ կարելի ասել Թիւրքիայի նկատ-

մամբ, որովհետև նրա օտարացեղ քրիստոնեայ տարրերը աւելի կուլտուրական, աւելի քաղաքակրթուած են, քան թիւրք և առհասարակ մահմեդական տարրը։

Սակայն երիտասարդ-թիւրքերը նեղ նացիօնալիզմով առաջնորդուելով՝ աւելի կուլտուրական բաղկացուցիչ տարրերին ասացին. դուք կանգ առէք, սպասեցէք. մենք ձեր իրաւունքներն ու ազգային առանձնաշնորհումները կը կրճատենք, մինչև որ թիւրքերը և առհասարակ մահմեդական տարրերը կը հասնեն ձեր կուլտուրականութեան աստիճանին։ Ուրիշ խօսքով ասած՝ դուք կանգնեցրէք ձեր քաղաքակրթական առաջխաղացութիւնը, մինչև որ միւսները ձեզ կը հասնեն։

Այսպիսի անհեթեթութեան շնորհիւ էլ առաջացաւ դժգոհութիւն, որը քանի գնում՝ ընդարձակ ծաւալ է ստանում։ Այն ժամանակ, երբ Մակեդոնիայի բանակների շնորհիւ սահմանադրութիւնը վերհռչակուեց, հէնց այդ ոյժի վրայ յենուած երիտասարդ-թիւրքերը պարտաւոր էին խիստ կերպով ճնշել նախորդ ռէժիմի պաշտօնեաներին և ազդեցիկ, բարձրաստիճան անձանց։

Նրանք պարտաւոր էին Աբդիւլ-Համիդի նման նրանց ևս չէզոքացնել, անվնաս դարձնել և, եթէ կարիքը ստիպէր, նոյն իսկ երկրից արտաքսել, որպէս զի սահմանադրական կարգերի հիմքերը ամուր և հաստատուն մնային։

Բայց նրանք այդ չարեցին, այլ՝ ընդհակառակն՝ սկսեցին յետադիմականներին սիրաշահել, իրանց մէջ ընդունել, որի արդիւնքն այն եղաւ, որ ներկայիս նրանք՝ իրանց ուժեղացած համարելով՝ արդէն սկսել են դաւեր սարքել աւելի ազատախոհ երիտասարդ-թիւրքերի քաղաքականութեան դէմ, և նրանից օր ըստ օրէ կուլ տալ են տալիս այնպիսի յետադիմական հապեր, որոնք թիւրք պետականութեան օրգանիզմին մեծ վնաս կարող են պատճառել։

Քաղաքական աշխարհի վերջին տեղեկութիւններին նայելով, հին-թիւրքերը, չնայած իրանց փոքրամասնութեան, վաղուց ի վեր մուտք գործած լինելով «Մ. և Ա.» կուսակցութեան մէջ, արդէն ձեռնարկել են յետադարձութեան քաղաքականութեանը։

Ապրիլի 9-ին Կ. Պոլսում կայացած՝ «Մ. և Ա.» ֆրակցիայի անդամների ժողովում, որին մասնակցում էին 178 անդամներ, որոնց թւում և երկու մինիստրներ, պահպանողական-ազգայնական թիւրքերը յայտարարեցին, որ մշակուած է տասն յօդուածից բաղկացած մի նոր ծրագիր, և պահանջեցին, որ նա

ընդունուի առանց վիճաբանութիւնների։

Պարլամենտական ֆրակցիայի նախագահ Թուլէաթ-բէյը, ի դիմաց աւելի արմատական Թիւրքերի, մի քիչ չեմ ու չում անելուց յետոյ, ստիպուեց ընդունել առաջարկը, որը պիտի կցուի «Մ. և Ա.» կուսակցութեան ծրագրին։

Նոր յօդուածների էութիւնը հետևեալն է.

Պատգամաւորները չպիտի ստանան կօնցէսսիաներ, չպիտի միջնորդեն օտարերկրացի նախաձեռնողների օգտին։

Կուսակցութեան անդամները մինիստրական պօրտֆէյլներ կարող են ստանալ միայն պարլամենտական ֆրակցիայի $^2/_3$ մասի համաձայնութեամբ։

Կուսակցութիւնը պարտաւոր է պահպանել կրօնական և ազգային սովորութիւնները։

Սուլթանական իրաւունքները պէտք է ընդարձակուեն, որպէս զի հաւասարակշռութիւն պահպանուի քաղաքական բոլոր գործօնների միջև, և այլն։

Համեմատաբար արմատական մեծամասնութեան շուտով ընկճուելը բացատրվում է նրանով, որ զօրքերի ընդհանուր հրամանատար Մահմուդ Շէվքէթ փաշան միջամտելով պահանջել է համաձայնութեան կայացում, ասելով որ չի թոյլ տայ ներքին ճգնաժամի ընդարձակումը։

Ժողովից յետոյ թէև եղել են հաւաստիացումներ, որ ֆըրակցիայի մէջ գոյութիւն չունեն տարաձայնութիւններ, բայց դրանց ոչ ոք հաւատ չէ ընծայում, որովհետև ամենքն էլ գեղեցիկ կերպով ըմբռնում են, որ ապրիլի 9-ին կղերա-պահպանողական փոքրամասնութիւնը յաղթեց առաջադէմ-դէմօկրատ մեծամասնութեանը։

Այսպիսով երիտասարդ-Թիւրքերը քաղում են և ճաշակում իրանց անհեռատեսութեան պտուղները, քանի որ վերջին օրերս պալատն արձակել է այնպիսի յետադիմական որոշումներ, որոնք ակներև կերպով ցոյց են տալիս, որ Թիւրքիայում րէակցիան նորից գլուխ է բարձրացնում։ Առաւելապէս Թիւրքիայի համար սարսափելին այն է, որ զօրքերի մէջ սկսել են յետադիմական մութ ոյժերը երիտասարդ-Թիւրքերի դէմ ագիտացիա մղել, մեղադրելով վերջիններիս, որ նրանք մոռացել են կրօնական տրադիցիաները և անսահման կերպով անձնատուր են եղել եւրօպական նորամուծութիւններին։

Աւելի սարսափելին այն է, որ Թիւրք սպաների մի խոշոր թիւ, համախմբուելով գնդապետ Սադըկի շուրջը, որը Սալօնիկի կօմիտէի նախկին անդամներից է, իրան համար նշանաբան է

ընտրել շարիաթի և խալիֆաթի պաշտպանութիւնը, անհաւատութեան դէմ կռիւ մղելը և այլն և այլն։

Անկասկած, սրանց կարող են յաջորդել միջազգային բարդութիւններ, մանաւանդ որ յետադիմականները խիստ արշաւանք են սկսել Անգլիայի դէմ։ Իսկ մենք գիտենք, որ միջազգային բարդութիւնների ծագման դէպքում, Թիւրքիայի ամբողջութեան գլխին Դամօկլեան սրի նման կախուած կը լինի այդ երկիրը բաժան-բաժան անելու սպառնալիքը։

Իսկ, որ «Մ. և Ա.» ֆրակցիայի մէջ տարաձայնութիւնները լայն կերպարանք են ստացել, այդ կարելի է եզրակացնել և նրանից, որ նախ ֆրակցիայի նախագահ Թալէաթ-բէյ, չուզենալով ենթարկուել փոքրամասնութիւն կազմող յետադիմականների որոշումներին, մտադիր է հրաժարուել նախագահութիւնից, և երկրորդ՝ որ ներկայ կաբինէտի հրաժարականը օրուայ խնդիր է. իսկ նոր կաբինէտի գլուխ կանցնի Հիլմի փաշան։

Երիտասարդ Թիւրքերը ինչ որ ցանեցին իրանց քաղաքական տհասութեան և անհեռատեսութեան շնորհիւ, այն էլ հնձում են։

A—S.

# ՌՈՒՍ ՊԱՐԲԵՐԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ

---

„Новая Жизнь", 1911 г. № № 3 и 4. Журналъ литературы, науки и общеcтв. жизни.

Ռուսական պարբերական հրատարակութիւնները տակաւին շարունակում են լոյս ընծայել այնպիսի յօդուածներ, որոնք տալիս են ռուս գրականութեան կոլոսս Լ. Ն. Տոլստոյի մասին գնահատութիւններ զանազան տեսակէտներից։ Մեծ գրողի գրեթէ վաթսունամեայ գրական գործունէութիւնը այնքան բազմերանգ, այնքան հարուստ է եղել, որ նրա լիակատար քննադատութիւնն ու գնահատութիւնը տալու համար՝ կարեւոր է թէ ժամանակ և թէ տոկուն ուսումնասիրութիւն։ Եւ ահա աստիճանաբար լոյս են տեսնում որոշ գնահատական յօդուածներ՝ Տոլստոյի գրական դէմքի առանձին մասերը գծագրող։ Տոլստոյի երկարամեայ գրական գործը բազմերանգ է. անհնարին է նրան չբաժանել մի քանի մասերի, ինչպէս, օրինակ, Տոլստոյը գեղարուեստական գրականութեան մէջ, հասարակական կազմակերպութիւնների տեսակէտից, փիլիսոփայական հարցերի՝ հոգու և նիւթի պրոբլէմների, կրօնական խնդիրների և այլն։ Այդօրինակ բնաւորութիւն է կրում նաև Մ. Էնգելգարդտի յօդուածը ներկայ ամսագրի № 3-ում՝ «Л. Н. Толстой и наука» (Լ. Ն. Տոլստոյը և գիտութիւնը) վերատառութեամբ։

Յայտնի է, որ Տոլստոյը իր կրօնական-փիլիսոփայական գրուածքների մէջ խիստ քննադատօրէն է վերաբերվում դէպի գիտութիւնը ընդհանրապէս։ Այդ պարագայում նրա հիմնական ելակէտը այն է, որ հասարակ դասակարգի շահագործման խնդրում ինչպէս ամեն զէնք, այնպէս էլ գիտութիւնը՝ ըստ ամենայնի խոշոր դեր է խաղում։ Գիտութիւնը սեփականութիւն է նոյն հարուստ, ուժեղ, կազմակերպուած շահագործողի. դա մի նոր, աւելի ևս ուժեղ զէնք է խեղճ, սեփականազուրկ մասսայի թշուառութիւնները աւելացնելու համար։ Այդ ելակէտով Տոլստոյը հասնում է այն ծայրայեղութեան, որտեղ նա միան-

գամայն ժխտում է պատմական-հասարակական գիտութիւնները, տեխնիկական կատարելագործութիւնները։ Նա շեշտում է այն հանգամանքի վրայ, որ առաջինները միմիայն մոլորեցնում են իսկական, բուն ժողովրդին, իսկ երկրորդները՝ շահագործումը աւելի անգութ դարձնում կամ, միլիտարիզմի փոխուած, ժողովրդի խաղաղ կեանքը վայրագ մարդասպանութեան ասպարէզի փոխում... Այսպէս՝ Տօլստօյը ժխտում է գիտութիւնը յանուն պարզ ու աշխատասէր ժողովրդի. ժխտում է ո՛չ որպէս այն կլասսիկ խաւարամիտները, որոնց կարծիքով գիտութիւնը ամեն տրադիցիա, ամեն սրբագործուած կազմակերպութիւն (դասային, կաստայական, դասակարգային, սեփականութեան սկզբունքը և այլն) կազմալուծում ու աւերում է։ Ո՛չ։ Ընդհակառակը, նա ժխտում է այդ ամենը, յատկապէս այդ տրադիցիաները, սրբագործուած սկզբունքները՝ դարերի ընթացքում դարբնուած ստրկութեան շղթաները խորտակելու, կտրատելու համար։ Ահա հէնց այդ պարագան է, որ առիթ է տալիս որոշ խորհրդածութիւնների. դա է, որ մեզ ստիպում է Տօլստօյին դասել տրամագծօրէն հակառակ այն խաւարամիտ բանակին, որը գիտութեան ժխտման մէջ իրան համարում է կողմնակից Տօլստօյի...

Եթէ մի փոքր խորասուզուենք այն մտքերի բովանդակութեան մէջ, որ արտայայտում է Տօլստօյը գիտութեան վերաբերեալ, մենք կը տեսնենք, թէ ինչպէս նա այդ խնդիրը սերտօրէն կապում է ժամանակակից հասարակական ինստիտուտների հետ։ Եւ յիրաւի՝ պարզապէս հանդէս է գալիս ո՛չ թէ գիտութեան էութեան բացասականութիւնը, այլ հէնց վերոյիշեալ ինստիտուտների, որոնց մէջ տիրապետող տարրերը ազատօրէն օգտվում են գիտութիւնից։ Առաջին նուագ թւում է, թէ գիտութիւնը իր էութեամբ բացարձակ կերպով պաշտպան է հանդիսանում կեանքի տէրերի լայնարձակ շահերին, նպաստելով տիրապետելու տենչով բռնուած «ուժեղների» մեծամեծ ախորժակների գրգռմանը։ Այստեղ Տօլստօյը յաճախ ծայրայեղութեան է հասնում և անխնայ կերպով յարձակվում սոսկ գիտութեան վրայ. նա սկսում է դատապարտել գիտութիւնը, թէ ինչու սա չէ մտածում հասարակ ժողովրդի նիւթական կացութիւնը թեթեւացնելու համար, կատարելագործելու վերջինիս համար կարեւոր գործիքներ, առօրեայ պէտքերին բաւարարութիւն տալու նպատակով։ Միանգամայն ճիշտ է այն, որ մասսան գիտութիւնից չափազանց քիչ է օգտվում. նա, ընդհակառակը, շահագործվում է նրանից. սակայն մի՞թէ գիտութիւնը՝ ըստ էութեան՝ այդ պա-

բագայում բացասական տարր է հանդիսանում։ Այստեղ անշուշտ մի թիւրիմացութիւն կայ, որը կարևոր է պարզել և որի վրայ, դժբախտաբար, առանձնապէս կանգ չէ առել յօդուածագիր Մ. Էնգէլգարդտը։

Գիտութիւնը հասարակական կեանքի զէնքերից մէկն է. զէնքի գործադրման բնոյթն ու եղանակը որոշում են ո՛չ թէ նրա բուն էութիւնը, այլ աւելի շուտ նրա յարաբերութիւնը հասարակական զանազան զանգուածների նկատմամբ։ Ըստ որում գիտութիւնը՝ իբր օգտակար կամ վնասակար երևոյթ՝ չը պէտք է քննադատել հէնց գիտութեան տեսակէտից. դա կը դառնայ մի դօգմա. նրա վրայ պէտք է նայել հասարակական փոխադարձ յարաբերութիւնների տեսակէտից։ Երբ հասարակական յարաբերութիւնների (անպայման կերպով հիմնուած տընտեսական հողի վրայ) զարգացման պրօցեսը տակաւին գտնըվում է այն շրջանում, որտեղ գերակշռող են անհատական կըղզիացած շահերի սկզբունքները, այնտեղ՝ փոխադարձ ընդհարումների պայքարներում՝ կոփվում ու դարբնվում են հակադիր տարրերից մէկի՝ ուժեղի զէնքերը։ Դրութեան տէրը, ուժեղը իր շահերին է ծառայեցնում ամեն ինչ. գիտութիւնը չէ միայն նրա զէնքը. ո՛չ. նրա համար դա բաւական չէ. նա կը շահագործի երկինքն ու երկիրը, կը շահագործի հողն ու արևը, մարդուն ու անասունին, կը շահագործի պետութիւնը՝ երկրի վրայ, իսկ Աստուծուն՝ երկնքում... Ուրեմն ամեն ինչ հասարակական յարաբերութիւնների մէջ պէտք է որոնել. դրանց շրջափոխութեան հետ է կապուած գիտութեան օգտակարութեան կամ վնասակարութեան գաղափարը։ Գիտութիւնը իբրև դարերի ընթացքում նուաճուած մի զէնք՝ ներկայ կարգերում ունի երկու երես. վնասակար և օգտակար՝ հասարակական յարաբերութիւնների միջավայրում։ Թող փոխուեն կարգերը, թող վերանան անհատական շահերի մանր պրինցիպները, թող տիրապետէ տնտեսական և հասարակական հաւասարութիւնը, այն ժամանակ կը տեսնենք, որ գիտութիւնը ո՛չ թէ չարիք է ու վնաս, այլ երանութիւն ու հրաշք...

*
* *

Անցնելով նոյն ամսագրի № 4-ին, մենք այստեղ գտնում ենք չափազանց հետաքրքրական մի յօդուած՝ ռուս ժողովրդի ստորին խաւերի մտաւոր շարժման մասին։ Յօդուածը պատկանում է Լ. Կլէյնբօրտին։ Յայտնի է, որ ռուս նորագոյն գրողների մի ահագին լեգէօն՝ դեռ ազատագրական շարժումից ա-

ռաջ՝ հանդէս էր եկել մօդեռնիստական-դեկադենտական գրական ուղղութիւնը ռուս իրականութեան մէջ պաշտպանելու նպատակով։ Իբրև պատճէն եւրօպական գրականութեան այդ ուղղութեան՝ ռուս դեկադենտները ընկան և խիստ ծայրայեղութեան մէջ, գլխաւոր նշանաբան ունենալով «գեղարուեստը գեղարուեստի համար» սկզբունքը։ Գրական այդ հոսանքը, լինելով շատ հեռու բուն ժողովրդական մասսաներից, դարձաւ արտայայտիչ բուրժուական զանգուածների այն խղճալների, որոնց մէջ տիրապետող տարրեր էին հանդիսանում շուայտութիւնը, մեղկ հեշտասիրութիւնը, ծուլութիւնը և դրանց հետ կապուած յոռետես հայեացքները կեանքի իմաստի վերաբերութեամբ։ Եւ այդ ամենը մեծ զարկ ստացաւ, առաւել լայն չափերով հրապարակ ընկաւ ռուս իրականութեան մէջ, երբ սկսուեցին ազատագրական շարժման հզօր ալիքների տարուբերումները։ Այդ խղճալների ներկայացուցիչները շատ խնդիրներ սքօղում էին «նատուրալիզմով», «հասարակական պրօբլէմներով» և այլն և այլն։ Դրան իբրև ապացոյց կարող է ծառայել այդ գրականութեան այն մասը, որը իրապէս պօռնօգրաֆիկ էր, բայց յաւակնութիւն ունէր «լուծելու» «սեռական պրօբլէմը»...

Մեղկացած, շուայտ, ծոյլ խաւերի փայփայած կեանքի արտայայտիչներն էին այդօրինակ գրողները. նրանք իսպառ հեռացած էին ժողովրդից, նրանք ծանօթ էլ չէին տանջուող մասսայի պահանջներին, թէև բազմիցս իրանց հերոսներին կապում էին ազատագրական շարժման հետ... Դա, ի հարկէ, գեղարուեստական գրականութեան շրջանում էր։ Ինչ վերաբերում է ռուսական առաջադէմ ինտելիգենցիային առհասարակ, այդտեղ ևս պէտք է շեշտենք, որ յանուն աշխատաւոր ժողովրդի գործող ղեկավարները յաճախ և շատ յաճախ առաջնորդվում էին վերացական հաշիւներով։ Հասկանալի է անշուշտ, որ դա արգասիք էր այն ժառանգութեան, որ ստացել է այդ առաջաւոր ինտելիգենցիան բուրժուազիայից. ռամկավարացման գաղափարը բազմիցս վարդապետվում էր ու պատուաստման փորձեր անվում բուրժուական հոգեբանութեամբ։ Ռամկավար գաղափարների պատուաստման փորձերը տեղի էին ունենում գրեթէ առանց բուն մասսայի մասնակցութեան։ Մտաւոր շարժումը այդ բնաւորութեամբ՝ սեփականութիւն էր դարձել նոյն ինտելեգենցիայի։

Ահա այդ տեսակէտից վերին աստիճանի հետաքրքրական երևոյթ է ներկայացնում ռուսական կեանքի անկիւններից մէկում փայլող այն մտաւոր կայծը, որը կրում է սոսկ ժողովր-

դական բնույթ։ Ճիշտ է, այդպիսի առկայծումներ կարելի է նըկատել Ռուսաստանի զանազան անկյուններում՝ սկսած մայրաքաղաքի կենտրոններից մինչև խուլ գաւառները, բայց շնորհիւ որոշ պայմանների՝ ամեն ինչ մնում է հասարակական տեսողութիւնից ու լսողութիւնից հեռու... Յօդուածը խօսում է բելոռուսական մի անկիւնում հրատարակուող «Заря» («Արշալոյս») ձեռագիր ամսագրի մասին, որը խմբագրվում է բացառապէս բանուորների ձեռքով։ Աշխատակիցները նոյնպէս բանուորներ են, որոնցից իւրաքանչիւրը իր մէջ կրում է ծանր կեանքի որոշ դրամատիզմը...

«Заря»-ի բանուոր հեղինակները խօսում ու քննադատում են այն բոլոր հարցերը, որոնք խիստ կենսական ու չափազանց ժամանակակից են տառապող, գործազուրկ աշխատաւորի համար։ Ամսագիրը թէև հետևում է որոշ չափով տպագրուող հրատարակութիւնների ձևին, բայց ո՛չ ստրկօրէն, որովհետև ամսագրի հէնց առաջին յօդուածը լինում է հրապարակախօսական և շօշափվում է ամենատագնապալից հարցերից մէկը։

Այսպէս է վկայում յօդուածագիրը։

Այստեղ արտայայտութիւն են ստանում այն բոլոր ցաւերն ու վշտերը, որոնք առանձնապէս համակել են ընչազուրկներին։ Ակնյայտնի է դառնում ըստ ամենայնի, թէ ո՛րչափ խոր ու ճնշող հետևանքներ է ունենում այդ դասակարգի վրայ քաղաքական ներկայ ծանր ճգնաժամը։ Հետևանքներից մէկը՝ դա բանուորի սովորական դարձած կիսաքաղց դրութիւնն է, գործի, աշխատանքի կատարեալ բացակայութիւնը, մի հարց՝ որը մի ամբողջ դրամատիզմ է յարուցանում յիշեալ ձեռագիր-ամսագրի հրապարակախօս Ս. Ստեփանովիչի յօդուածում։ Նա տալիս է այն պատկերը, թէ ի՛նչ է զգում ու վերապրում քաղցած բանուորը։

«Ի՞նչ է կեանքը,—հարց է տալիս Նա։—Ահա մի հարց, որը տանջում է իմ եսը։ Նայեցէք այդ ահարկու գործարանների վրայ։ Որքա՜ն սարսափելի են մարդիկ. որքա՜ն սարսափելի են ինձ համար նրանց գործերը։ Որչա՜փ շատ են այնտեղ մտածող էակներ, որոնց անձնաւորութիւնը ցեխի մէջ է կոխկռտուած, որոնք գործ են խնդրում... գործ... որ կարողանան միմիայն ապրել... Բայց ինչո՞ւ ապրել, ինչո՞ւ չմեռնել։ Որովհետև կեանքը ապագայով է պահպանվում... Այո, ապագայ կեանքը»... «Վերցրէք առաջին պատահած դրամատիրոջը. Նա ձեզ կասի, թէ մարդկային տառապանքը ծուլութիւնից է առաջանում. բայց հարցրէք, թէ ինչ կանէր նա, եթէ լինէր պրօլետար-աղքատի դրու-

*թեան մէջ։ Եւ երբ այդ ամենի վրայ դիտում ես մաքուր սըրտով, ակամայից հարց ես տալիս, թէ երկա՞ր դեռ պիտի տիրէ արդեօք խաւարը»։ Ահա աղքատ պրօլետարը, որ «ամբողջ մի ամիս ի զուր է աշխատանք որոնում, և արդէն քանի՜ գիշերներ բաց դաշտումն է անցկացրել, ինչպէս վայրենի գազան։ Օ՜, ինչ երջանկութիւն կը լինէր աշխատանք գտնելը։ Սառը քրտինքը պատեց նրան, երբ նա սկսեց մտածել իր կեանքի դժուարութեան մասին. նա հարցնում էր ինքն իրան. գուցէ իմ երջանկութիւնը տառապանքների՞ մէջ է։ Ի՞նչ անել այն ժամանակ։ Ո՞ւմ պէտք է ես մեղադրեմ իմ դժբախտութիւնների համար։ Գուցէ իմ քաղցած զաւակների՞ն, որոնց կեանքը ես պէտք է պահպանեմ իմ ծանր աշխատանքով։ Օ, ո՛չ, իմ որդիքը մեղաւոր չեն իմ ծանր կեանքի մէջ։ Հապա այն ժամանակ ո՞վ է մեղաւորը»։ «Որքա՜ն ցաւալի է, որ ես գիտնական չեմ, բանուոր եմ, զուրկ եմ լուսաւորութիւնից։ Ես կը լինէի որոնող, ես կը գտնէի մարդկանց երջանկութիւնը։ Սակայն իմ երջանկութիւնը՝ դա աշխատանքն է, և ես աշխատա՛նք եմ խնդրում, աշխատա՛նք։ Ինչ յիմա՞ր մարդ եմ։ Խնդրում եմ աշխատանք։ Ես մարդկային երջանկութեան քաղցած ու ցնցոտիոտ որոնողն եմ, բայց իմ երջանկութիւնը ամենայիմարն է՝ ունենալ գործ, աշխատանք»։*

*Եւ յիրաւի՝ ինչ ցնցող տողեր են, որքա՛ն դրամատիզմ է պարունակում այս անպաճոյճ հատուածը, որը ամբողջովին մի հառաչանք է՝ տառապող, տապակուող սրտի անհունութիւնից բղխած։ Դա վերապրուած մի ամբողջ կեանք է, որը հասկանալի կարող է լինել յատկապէս այն էակներին, որոնք ցնցոտիների մէջ կորած, սոված, անգործ՝ թափառում են աշխատանք փնտռելով։ Աշխատա՛նք, դէպի որը լարուած է գործազուրկ սոված բանուորի ներվային ամբողջ համակարգութիւնը։*

*«Ես չեմ ապրում, այլ քարշ եմ տալիս իմ գոյութիւնը. չորս կողմս խաւար, աղքատութիւն, ճնշումն։ Ճակատագրի տընօրինութիւնը ինձ համար՝ խաւար, մռայլ աշունն է։ Այժմ միակ ճանապարհը դէպի մահն է, որովհետև աշնանը ամեն ինչ մեռնում է. ուստի ես էլ պէտք է մեռնեմ»։*

*Այս յուսահատական մօմենտները միայն ներկայի ծանր կացութիւնն են պարզում, և հէնց ամսագրի մէջ հանդէս են գալիս այդ տրամադրութեանը հակադիր հոսանքներ։ Մի այլ աշխատակից՝ բանուոր Դմ. Բազմվէտը ասում է կեանքի նպատակի վերաբերմամբ, թէ նրան «պէտք չէ որոնել միմիայն սեփական անձի մէջ, այլ նրանից դուրս»։*

«Ես կը մեռնեմ, բայց մարդկութիւնը կապրի,—աւելացնում է Նէվլինը իր «Ես մարդկութեան մասնիկն եմ» յօդուածում.—ես մի մեծագոյն ամբողջութեան մասնիկն եմ։ Ես՝ մարդկութեան բջիջն եմ, տիեզերքի ատոմը։ Նա՝ յաւիտենական է, Նրա հետ և ես։ Ես զգում եմ այդ միութիւնը և բախտաւոր եմ գիտենալով, որ ոչնչութիւն չեմ»։

Թէ որքան ռուս նորագոյն գրողներից շատերը, ինչպէս վերը մենք շեշտեցինք, հեռու են ժամանակակից բանուորական կեանքի արտայայտութիւններից ու հերթական պահանջներից, այդ պարզապէս ըմբռնելի է և ներկայ ամսագրի ղեկավարների համար։ Ամսագրի քննադատը՝ Ս. Ստեֆանովիչը ընդգծում է, թէ ինչպէս մեր կեանքի «արտայայտիչ» գրողները իրական կեանքից վեր, շատ վեր են սաւառնում, ըստ որում բանուորական այդ նոր գրականութեան համար հնի վերջին շրջանը այնքան մօտ է, որքան «երկնքի աստղերը» մեզ։

«Ինչ է ներկայացնում այդ գրականութիւնը, —ասում է քննադատը։—Գիտակից բանուորը այժմ չգիտէ, թէ ինչ ելք գտնի այս սոսկալի կացութիւնից, որպիսին է ներկայ ճախճախուտը, իսկ մեր մօդեռնիստները վխտում են մի այնպիսի հարցի մէջ, որպիսին է սեռական պրօբլէմը։ Ես չեմ ժխտում, որ այդ հարցը մարդկութեան համար նշանակութիւն ունի, բայց նա յարուցուած է մի այնպիսի ժամանակ, երբ բանուորների մտաւոր ամբողջ ոյժը կենտրոնացած է միանգամայն այլ օբիեկտների վրայ։ Եւ մանաւանդ այն գաղափարը, որը արծարծում են մեր մօդեռնիստները, այնքան լրբենի է, որ, կարծես, նրանք վերադառնում են հարեմների անցեալին։ Եւ ինչու համար դուք, յարգելի պարոններ, հնարել էք մի այդպիսի հակագեղարուեստականութիւն, որպիսին է գեղեցիկ կնոջ մարմնի նկարագրութիւնը, այն էլ այդպիսի գոյներով։ Ձեր գաղափարներով դուք շատ չարիքներ բերիք միամիտ կնոջ համար։ Եւ միթէ ձեր գաղափարը ազատ սէր է քարոզում։ Ձեր քարոզը տանում է ոչ թէ դէպի ազատ սիրոյ գաղափարը, այլ հակառակ կողմը՝ դէպի ազատ անառակութիւնը։ Եւ ահա, երբ բանուորը ձեզանից լոյս ու հոգևոր կեանք է սպասում, դուք նրան հրամցնում էք անբարոյականութեամբ լցուած «սեռական պրօբլէմը»։

Կացութեան մռայլ հօրիզոնը նոյնպէս ծանր խոհերի առիթներ է տալիս նոյն ամսագրի ներկայացուցիչներին. այդ ճգնաժամը Ա. Նէվլինի մի ոտանաւորի մէջ ներկայացուած է իբրև մի մութ, մռայլ ամպ, որ ծանրացած է կեանքի վրայ.

Ասա ինձ, մռայլ ամպ, ինչու համար
Բացուել ես իբրև վարագոյր խաւար.
Պայծառ արևը դու փաթաթել ես
Անթափանցելի սև ցանցով այնպէս.
    Եւ նրա ոսկէ ճառագայթները
    Էլ չեն համբուրում թարմ ծաղիկները։
    Խոնաւ թուխպն է, որ հովիտի վրան
    Քամով ու ցրտով խոտն է փետփետում.
Անձրև, մառախուղ, իբրև խարազան
Ծեծում են ճիւղի դէմքն կանաչաւուն։
Սև մռայլով ես բացուել, տարածուել,
Անթափանցելի, ով դու ամպ խաւար։
    Չէ ծաղկում ծաղիկ, կեանքն է խլացել,
    Չեն երգում թռչունք գարնան հողմահար։
    Դէհ, փչիր շուտով, մրրիկ կատաղի,
    Ցրիր այդ խաւար ամպը մասերի...

Իսկ մի այլ ոտանաւորի մէջ, «Զօն» վերտառութեամբ, նա հասարակական ձգտումները հակադրում է անձնական ինստինկտներին։

«Հարկաւոր չեն ինձ կրքեր. բաւական են ցանկութիւնները. անձնական ձգտումների համար չկայ ոչ մի անկիւն իմ հոգու մէջ. գուր են ցնորքները. վճռել եմ ընդմիշտ մոռանալ նրանց։ Իմ գլխում ծագում են միանգամայն այլ մտքեր. թէ ինչպէս ծանր դրութեամբ ապրում են մարդիկ և թէ ինչպէս կարօտ են նրանք օգնութեան, ինչպէս օգնութիւն է պէտք նաև բոլոր մանուկներին։ Ես վճռեցի մոռանալ բոլոր դատարկ յուզմունքները. ժողովրդի ապերջանկութիւնը գերազանցօրէն զօրեղ է»։

Եւ նոր, թարմ գրականութեան այդ առաջաւոր ռահվիրաները՝ չնայած իրանց սոսկալի ներկային՝ ամենայն լաւատեսութեամբ նայում են ապագայի վրայ։ Անձնականը երկրորդական համարելով, նրանք ամբողջովին գրեթէ համակուել են հասարակական, մարդկային գաղափարներով։

«Ռուս ժողովրդի մտաւոր-հոգեկան կեանքը,—բացատրում է ամսագրի մի այլ աշխատակիցը՝ անխնայ քննադատ Նիկ. Սվէտօվը,—գնում է իր բնական զարգացման ճանապարհով, և այն միազմները, որոնք վարակել են այսպէս կոչուած հասարակութեան ինտելիգենցիային, միանգամայն անզօր կը լինեն ժողովրդական հոգևոր արտայայտութիւնների դէմ։ Հասարակութեան ինտելիգենցիայի անկման և կազմալուծման հետ միասին,

ժողովրդի միջից բարձրանում է մի նոր մեծ ոյժ՝ ժողովրդական ինտելիգենցիա, որը և կը լինի ժողովրդականութեան իսկական արտայայտիչը։ Ահա որն է ապագան»…

Կասկածից դուրս է անշուշտ այն հանգամանքը, որ դա իսկական պրօլետարական օրգան չէ, սակայն տոգորուած լինելով նման տենդենցներով՝ նրան մի քայլ է հարկաւոր դառնալու այդպիսիներից մէկը։ Եւ իսկապէս՝ քայլերը ուղղուած են հէնց այդ գծով։ Այդ ձեռագիր օրգանը, որը լոյս ընծայելու համար քիչ ջանք չէ գործ դրվում, ունի խմբագրական կազմ, որը բաղկացած է հետևեալ անձերից. Անտօն Խմարա՝ Ս. քաղաքի բանուոր, քարհատ. սովորել է քաղաքային դպրոցում, փորձել է երեխաների սովորեցնել, բայց բանտ է ընկել։ Ամսագրի առաջին 6 համարները խմբագրել է Ա. Ն—լինը՝ գիւղացի, նոյնպէս քաղաքային դպրոցում է սովորել. հօր մահից յետոյ «հօրեղբօր խաբեբայական հնարների շնորհիւ» մնացել է անհող։ Ս. Ստե—վիչ (քարտուղարը)՝ սղոցող, երկու ձմեռ ժողովրդական ուսումնարանում է սովորել։ 9 տարեկանից սկսած աշխատում է հարուստ գիւղացիների մօտ, ստանալով 5 ր. տարեկան, ամեն ինչ պատրաստ. իսկ 16 տ. հասակից՝ 15 րուբլով։ Վ. Ջօ—կօ՝ հրատարակիչն է. «ման է գալիս գիւղերում տոպրակով ու ձեռի կարի մեքենայով և հագուստ կարում գիւղացիներին»։ Սովորել է երկդասեան դպրոցում, բայց չէ աւարտել։ Գոհ է, որ կարողանում է «որևէ բան գրել գիւղացու վշտի և սօցիալիզմի գաղափարի մասին»։ Ահա սա է ամսագրի խմբագրական կազմը։

Ահա սրանք են և այն առկայծումները, որոնք լայնածաւալ Ռուսաստանի զանազան անկիւններում՝ ժողովրդական ճնշուող, շահագործուող տարրերի մէջ պլպլում են որպէս նորավառ աղօտ կանթեղներ, որոնք սակայն մի օր, ապագայում հոսանքների միացմամբ պիտի փոխուեն ճաճանչափայլ, լուսաւոր ջահերի։

ՍՈՒՐԽԱԹԵԱՆ

# ԱՐԵՒԵԼԱԳԻՏՈՒԹԻՒՆ, ԿՈՎԿԱՍԱԳԻՏՈՒ-ԹԻՒՆ, ՀԱՅԱԳԻՏՈՒԹԻՒՆ

---

**Անիում հաստատուելիք հնագիտական ինստի-տուտը**

Պրոֆ. Մառը վերջերս մի զեկուցում ներկայացրեց Գիտութեանց Ճեմարանի համագումարին, որի մէջ Անին նա կոչում է հնագիտական պսակի ադամանդ։ Առաջ բերելով համառօտակի Անիի պատմութիւնը և նրանում պահպանուած հին յիշատակարանների կարևորութեան նշանակութիւնը, Մառը ի միջի այլոց գրում է, որ եթէ ոչ այսօր, գոնէ վաղը կամ միւս օրը, ռուսական հնագիտութեան զարգացման հետ համընթաց կերպով լուրջ հարց կառաջանայ Հայաստանի Արմաւիր, Արտաշատ, Վաղարշապատ, Դուին և այլ քաղաքներում պեղումներ կատարելու, որոնք հետաքրքրական են ոչ միայն արևելագէտների, այլ և բիւզանդագէտների և կլասիկների համար, որով Ռուսական Հնագիտական Ընկերութեան կլասիկական բաժանմունքի՝ Գառնին ուսումնասիրելու նախաձեռնութիւնը թերևս հիմնաքարն է ապագայ գործունէութեան։

Եւ յետագայ աշխատանքների գործը դիւրացնելու համար, Ն. Մառը առաջարկում է հաստատել Անիում հնագիտական ինստիտուտ, որը մեծ օժանդակութիւն կը լինի կովկասեան համալսարանի պատմա-լեզուաբանական ֆակուլտէտի ուսանողների համար և որի շնորհիւ տեղի կունենան սիստեմատիկ պեղումներ և ուսումնասիրութիւն և պահպանումն գտնուած այն բոլոր իրերի, որոնք երևան կը հանուեն Շիրակում։

Նախագծի համաձայն՝ այդ ինստիտուտի պահպանման համար կը հարկաւորուի 5000 րուբլի տարեկան, որը կը ստացուի պետական գանձարանից և որպիսի գումարով ի միջի այլոց կը պահուեն նրա վերատեսուչն ու իրերի գիտնական պահպանողը։ Ինստիտուտը, գտնուելով ժողովրդական լուսաւորութեան մինիստրութեան վարչութեան ներքոյ, գիտական տեսակէտից կը յանձնուի Գիտութեանց Ճեմարանին։

Կովկասի Փոխարքան կը կոչուի ինստիտուտի պատուաւոր նախագահ, իսկ Երևանի նահանգի և Կարսի շրջանի նահանգապետները կը լինեն նրա պատուաւոր անդամները։ Ամենայն Հայոց Կաթողիկոսը ինստիտուտի պատուաւոր հոգաբարձուն է։ Ինստիտուտի վերատեսչի պաշտօնը յանձնվում է Գիտութեանց Ճեմարանի պատմա-լեզուաբանական ճիւղի հայագէտներից մէկին, կամ համալսարանների պրօֆէսօրներից և կամ Լազարեան Ճեմարանի հայագէտներից մէկն ու մէկին։

Վերատեսուչը այդ պաշտօնը վարում է ձրիաբար, ստանալով միայն 300 ռուբլի ճանապարհածախս տարեկան։

Գտնուած իրերի գիտնական պահպանողը նշանակվում է ինստիտուտի վերատեսչի կողմից, համաձայնութեամբ Գիտութեանց Ճեմարանի պատմա-լեզուաբանական ճիւղի։ Ինստիտուտի միջոցներն են՝ 1) պետական գանձարանից տրուող գումարը. 2) այն հողաբաժնի արդիւնքները, որը կը յատկացուի կառավարութեան կողմից ինստիտուտին, և հրատարակութիւնների վաճառումից գոյացած գումարները, 3) այն եկամուտները, որոնք գոյանում են ինստիտուտի սեփականութիւնից և 4) նուիրատուութիւններից հասարակական հաստատութիւնների, ինստիտուտի անդամների և մասնաւոր անձանց։ Ինստիտուտի նպատակն է՝ 1) սիստեմատիկ պեղումներ կատարել Անիում և նրա շրջակայքում, 2) ուսումնասիրել այս շրջանի հնութիւնները և նպաստել նրանց ուսումնասիրութեան գործին և 3) լինել գործնական դպրոց ապագայ հետախոյզներ պատրաստելու գործի համար, որոնք են՝ արևելագէտներ, կլասիկներ, բիւզանդագէտներ և գեղարուեստի պատմաբաններ։ Ինստիտուտի պարտքը պիտի լինի պահպանել շրջանի մէջ գտնուող հին յիշատակարանները, նորանոր կառուցումներ անել՝ համաձայն ստացուած նպաստների՝ և լաւացնել նրանց. դրանք ծառայելու են որպէս հնութիւնների մուզէյ, ծառայողների, բանուորների բնակարաններ և այլն։

Եթէ պրօֆ. Ն. Մարրի այս նախագիծը ընդունուի, մենք ականատես կը լինենք մի նոր դարաշրջանի բացման, որով մեր երկրի այդ ամենահետաքրքրական վայրը դէպի ինքը գրաւելով գիտական աշխարհի ներկայացուցիչներին՝ հնարաւորութիւն կը տայ նրանց նորանոր թանգարժէք հնութիւններ և ուսումնասիրութիւններ լոյս աշխարհ բերել, որի շնորհիւ հնագիտութիւնը և գլխաւորապէս արևելագիտութեան և հայագիտութեան վրայ նոր լոյս կը սփռուի։

Յ. Գ.

**Արաբների եւ պարսիկների պատմութիւնից**

*Մարտի 31-ին, պրոֆ. Ն. Վեսելովսկիի նախագահութեամբ, կայացել է Արեւելեան Հնագիտական Ընկերութեան ճիւղի նիստը։ Պրիվատ-դոցենտ Ի. Կրաչկովսկին զեկուցել է արեւելեան իր ճանապարհորդութեան մասին, որի ժամանակ նա գտել է երկու ձեռագրեր, որոնք պարունակում են արաբական ամենանշանաւոր գրողներից բանաստեղծ և կոյր փիլիսոփայ Աբուլ-Ալայի (X—XI դար) աշխատութիւնները, որոնցից մէկը անյայտ է մնացել արեւմտեան եւրոպական գիտնականների համար ցայսօր։ Այդ աշխատութիւնը վերաբերում է հրեշտակներին և ներկայանում է իբրև ամենահետաքրքրական կոթողներից մէկը արաբական գրականութեան մէջ, տուեալ դարաշրջանի։ Աշխատասիրութեան նշանակութիւնը կայանում է նրանում, որ նրա հեղինակը ահագին քանակութեամբ բանաստեղծական հատուածներով խօսում է երկնքի հրեշտակների հետ, բացատրելով նրանց անունների լեզուաբանական առանձնայատկութիւնները։*

*Գիրքը զարդարուած է արեւելեան ֆանտազիայի արդիւնք վառ գոյնի ծաղկանկարներով, որի մէջ գործածուած սուր ակնարկներից շատերը ներկայիս, նրանց նպատակը հասկանալու տեսակէտից, անհասկանալի են մնում, թէև որոշ տեղեր կան, որոնք ապացուցում են, որ հեղինակը օժտուած է եղել գեղեցիկ և սուր մտքով. ապացոյց դրան կարող է ծառայել այն, որ նրանում գործադրուած է սուր երգիծանք, համեմուած փիլիսոփայական խորիմաստ դարձուածներով։ Սկեպտիկ-փիլիսոփան անխնայ կերպով հարուածում է իր ժամանակի գրագէտների կեղծ-գիտնականութիւնը։*

*Երկրորդ զեկուցումը կարդացել է պրոֆ. Վ. Բարտոլդը, նիւթ ունենալով «Պարսկաստանի ասպետականութիւնն ու քաղաքների կեանքը Սասանեանների և իսլամի ժամանակ»։*

*Սասանեանների տիրապետութեան դարաշրջանը եղել է Պարսկաստանի գերազանց, բարձր կուլտուրայի և պետական կեանքի բազմակողմանի զարգացման շրջան։*

*Այդ դարաշրջանում տիրում էր ասպետների դարը, որը ստեղծեց ասպետական իդէալիզմ և ամուր արիստոկրատիկ կազմ։*

*Սասանեանները նպաստում էին օտարազգիների մուտքին Պարսկաստանում, որոնց թւում մուտք գործեցին նաև քրիստոնեայ-սիրիացիները։*

*Օտարազգիների ներս մտնելը պատճառ դարձաւ տիրա-*

պետող կարգերի կործանման։ Երբեմն անհարկու ամրոցները, որոնցից դուրս եկած ասպետները կարաւանների վրայ էին յարձակվում, շրջապատվում էին ըմբոստացած ժողովրդական զանգուածներով, որի պակասորդը լրացրեց խլամի արշաւանքը և մահմէդականութեան մուտքը։

Արիստօկրատիկ կարգերի աստիճանական անկումով, զուգընթացաբար, համաձայն անխուսափելի էվօլիւցիայի, Պարսկաստանում զարգացաւ առևտուրն ու քաղաքային կեանքը, որի ընթացքում ընդարձակվում էին քաղաքները, համաձայն կեանքի ստեղծած պահանջների և թելադրանքների։

---

# ԳԻՏԱԿԱՆ, ԳՐԱԿԱՆ, ԹԱՏՐԱԿԱՆ ՔՐՈՆԻԿՈՆ

---

**Կրոմվէլի գլուխը** Լոնդոնի արքայական հնագիտական ընկերութիւնը վերջերս ստացաւ իբրև ընծայ մըստր Վիլկէնսոնից հռչակաւոր Օլիվեր Կրոմվէլի գլուխը, որը համարվում է իսկականը և որով հետաքրքրվում է ներկայիս ամբողջ Անգլիան։ Թերթերը հարց են տալիս, թէ ազգային հերոսի նշխարը ինչ կերպով գտնուեց Վիլկէնսոնների մօտ։

Այդ առիթով «Daily Telegraph»-ը գրում է.

Օլիվէր Կրոմվէլը վախճանուեց 1658 թ.։ Նրա մարմինը զմռսուելուց յետոյ արքայական պատիւներով ամփոփուեց Վեստմինստերեան աբբայարանում։ 1661 թ. յունուարին նրա մարմինը դուրս հանուեց գերեզմանից համայնքների պալատի հրամանով և Կարլ 1-ին Թագաւորի մահապատժի տարեկիցի օրը կախուեց իր՝ այսինքն Կրոմվէլի փեսայի և նրա մի բարեկամի դիակների հետ, փոփոխամիտ ամբոխի անէծքների ներքոյ։

Հետևեալ օրը այս դիակները վայր առնուեցին, և դահիճը կտրեց նրանց գլուխները՝ մարմինները ամփոփելով հէնց կախաղանների տակ փորուած փոսում. իսկ գլուխները ի ցոյց դրուեցին Վեստմինստերեան աբբայարանի կտուրի տախտակամածում։ 1686 թ., այսինքն 25 տարի յետոյ, մի ուժեղ փոթորկի ժամանակ Կրոմվէլի գլուխը վայր ընկաւ, որը վերցրեց պահակը և հագուստի տակ պահելով՝ իր տունը տարաւ, պահելով մինչև իր մահը։ Պահակի այրին ծախեց Կրոմվէլի գլուխը վերջինիս ազգական Րոսսելին։ Այս ընտանիքում Կրոմվէլի գլուխը մնաց մօտ մի դար, որից յետոյ վաճառուեց ոմն Կոկսին 118 ֆ. ստերլինգով։

Սրանից յետոյ երեք հոգի անհաշտ դեմոկրատներ գնեցին

Կրոմվէլի գլուխը Կօկսից 230 ֆ. ստերլինգով և ի ցոյց դրին, վերցնելով իւրաքանչիւր այցելուից 2 շիլինգ։

Վերջին երեք դէմօկրատների մահից յետոյ, նրանցից մէկի դուստրը ծախեց Կրոմվէլի գլուխը Վիլկէնսօնի պապին։

Պատմելով այս ամբողջ պատմութիւնը արքայական հնագիտական արտակարգ նիստում, Վիլկէնսօնների ժառանգը Կրոմվէլի գլուխը ընծայաբերեց ընկերութեանը։

Աշխարհահռչակ մասնագէտներ քննելով Կրոմվէլի գլուխը միաձայն վկայեցին, որ գլուխը պահպանել է իր առանձնայատկութիւնները, այն է՝ նկատվում են գլխի վրայ ուռուցիկ ջղերը, նեղ ճակատը, թաւ յօնքերը, դէպի ձախ թեքուած քթի ոսկորը, ապացոյցներ՝ որոնք աներկբայօրէն ցոյց են տալիս, որ դա հէնց Կրոմվէլի գլուխն է։

Այսպիսով Լօնդօնի արքայական հնագիտական ընկերութիւնը տէրն է այժմս հռչակաւոր հասարակական գործչի գլխի։

Վերջում «Daily Telegraph»-ը նկատում է. «Հէնց այս շրթունքները յայտարարեցին ժամանակին անողոք կռիւ, մինչև կը հասնի այն ժամանակը, երբ կարելի է սեփական իրաւունքի կատարեալ ինքնագիտակցութեամբ ասել՝ «civis britanuisus sum».

—

**Քրիստոս պատմական դէմք չէ**

Հին Բաբելօնի աւերակների մէջ կատարուած վերջին պեղումների շնորհիւ հնարաւոր եղաւ բացատրել, որ հրէական և ապա քրիստոնէական կրօնական վարդապետութիւնների աղբիւրները վերցուած են Բաբելօնի աւանդութիւններից։ Ասորագէտ Իենսէնը վերջերս բացատրեց, որ համաձայն բաբելական գրականութեան տուած տեղեկութիւնների՝ կարելի է հաստատապէս ասել, թէ ինչպէս հելլէնական միֆօլօգիայի, նոյնպէս և քրիստոնէական հաւատալիքների աղբիւրը բաբելական հերոս Գիլհամշայի կեանքի այլևայլ էպիզօդներն են, որը Յիսուսի նախապատկերն է ներկայանում։

Համանման մտքեր է արտայայտել նոյնպէս քրիստոնէութեան ծագման նկատմամբ փիլիսոփայ Դրեվսը, որոնցով ապացուցվում է, որ քրիստոնէութիւնը ոչ այլ ինչ է, եթէ ոչ միֆիականութեան մի սիստեմ, որը վերցուած է այլ, աւելի հին կրօնական աւանդութիւններից և որոնց շնորհիւ հաստատվում է այն կարծիքը, թէ Քրիստոս իրօք երբևիցէ գոյութիւն չունեցող մի դէմք է։ Մի խօսքով՝ ապացուցվում է, որ Քրիստոս

պատմականապէս գոյութիւն չէ ունեցել, այլ որ նա ենթադրական ֆանտաստիկ մի անձնաւորութիւն է։ Բացի նորագոյն հետազօտութիւններից, կան նաև աւելի հին գիտնականների մեկնաբանութիւններ, որոնցից ականաւորների հեղինակներն են Բրունօ, Բաուէր, Շտրաուս։

Ակներև է, որ Քրիստոսի պատմական գոյութեան դէմ արտայայտուած այսօրինակ կարծիքները պիտի առաջ բերէին և հակադիր կարծիքներ այն բանակին պատկանող գիտնականների շրջանից, որը տրամադիր է Քրիստոսին պատմական, գոյութիւն ունեցող դէմք համարելու։

Վերջին տեսակի ուսումնասէրների բանակին է պատկանում Ս. Բուլգակօվը, որը վերջերս Մօսկվայի կրօնա-փիլիսօփայական ընկերութեան նիստերից մէկում մի զեկուցում կարդաց, «Քրիստոնէութիւնն ու միֆօլօգիան» խորագրով, որով նա յարձակումներ գործելով Իեսէնի, Դրեվսի և սրանց հետևորդ Ռօբերտսօնի և Սմիտի դէմ՝ այն կարծիքն է յայտնում, թէ Քրիստոս ոչ թէ միֆօլօգիական, այլ իրօք պատմականապէս գոյութիւն ունեցող մի անձնաւորութիւն է եղել։ Նրա գլխաւոր արգումենտացիաներն այն են, որ ազատախոհ պատմաբանները, ինչպէս և բողոքական աստուածաբանները առհասարակ ղեկավարուել են իրանց անհատական, սուբիեկտիվ աշխարհահայեացքով, և որ ճշմարիտ գիտնական պատմաբանները միշտ հերքել են Դրեվսի և միւսների արտայայտած կարծիքները։

Այս սուբիեկտիվ quasi-գիտական կարծիքներին զեկուցող Ս. Բուլգակօվը հակադրեց Քրիստոսի նկարագիրը, որը պահպանել է տիեզերական եկեղեցին շնորհիւ աւանդութիւնների և կրօնական ներքին փորձի, որը և միակն ու ճշմարիտը պիտի համարուի։

Այս զեկուցումից յետոյ տեղի են ունեցել հետաքրքրական վիճաբանութիւններ, որից յետոյ Ս. Բուլգակօվը մասամբ մեղմացրել է իր եզրակացութիւնները և յայտնել այն կարծիքը, թէ ինքը դէմ չէ խօսում կրօնի խիստ ուսումնասիրութեան, այլ որ նա ցանկութիւն է յայտնում, որպէսզի գիտութիւնը կազմուած լինի ոչ միայն սառն տրամաբանական եզրակացութիւններից բղխած նուազաքանակ փաստերից, այլ որ նա թափանցէ նաև ուսումնասիրելիք ժամանակների կրօնական ապրումների և ժամանակի ոգու մէջ, գեղարուեստական խորազննութեան ուղիով ընթանալով առաջ։

Զեկուցողը նաև վերջում համամիտ եղաւ այն առարկութիւններին, որ քրիստոնէութեան մէջ մուտք են գործել ուրիշ

կրօններից նմանապէս այլևայլ էլէմենտներ, մանաւանդ արարողութիւնների փոխանցմամբ, և որ քրիստոնէութեան մի քանի մտքերը և կարծիքները վերցուած են աւելի հին կրօնական աւանդութիւններից և հաւատալիքներից, բայց այս վերջինները քրիստոնէութեան մէջ մուտք գործելով՝ զարգացել են ինքնուրոյն կերպով, ստանալով քրիստոնէական բնոյթ և կորցնելով իրանց նախնական կերպարանքն ու ծագումը։

Մի խօսքով, այդ աւանդութիւններն ու հաւատալիքները հնացած լինելով՝ մտել են քրիստոնէութեան աւազանի մէջ և նորոգուած, թարմացած դուրս եկել այնտեղից։

Որչափ էլ խիստ լինեն Քրիստոսի պատմական գոյութեան կողմնակիցների ցասումները նորանոր գիտական հետազօտութիւնների դէմ, բայց և այնպէս պարզ է, որ Բաբելօնի աւերակների պեղումները գալիս են նոր լոյս սփռելու այս հետաքրքրական նիւթի պարզաբանութեան և բացայայտման գործի վրայ, և հաւանականաբար մօտ ապագայում անողոք գիտութիւնը մեզ կասէ իր վերջին խօսքը։

---

# ՓԱՌԱՆՁԵՄ

*(Դրամա 5 գործողութեամբ, հեղ. Սամսոն Գէորգեանի.)*

*Որեւէ պատմական պիէս գրելու համար հեղինակից հսկայական աշխատանք է պահանջվում։ Հեղինակը պէտք է անհրաժեշտօրէն խորազննին քննութեան և լուրջ ուսումնասիրութեան բովից անցկացնէ ժամանակի ոգին և միջավայրը, որից և երևան են գալու նրա հերոսները։ Գուցէ այդ դժուարութիւններն են պատճառ, որ մենք չունենք օրինաւոր պատմական պիէսներ։*

*Եւ սակայն որքա՜ն առատ նիւթ կարող է տալ մեր անցեալ պատմութիւնը իր բազմերանգ էպօխաներով և անձնաւորութիւններով։ Օրինակ, որպիսի՜ հոյակապ սիւժէներ կարող է ծառայել Տիգրան Մեծի և Արշակ II-ի նման թագաւորների կեանքը։*

*Փաստաբան Սամսոն Գէորգեան յիրաւի մեծ ռիսկ է վերցրել իր վրայ՝ գրի առնելու մի պատմական դրամա «Փառանձեմ» անունով։ Նա, առաջնորդուելով Փաւստոս Բիւզանդի՝ Փառանձեմի մասին պատմածից, բեմ է հանել այդ պատմութիւնը և անուանել դրամա։*

*Պատմութիւնից գիտենք, որ Փառանձեմ անունը կրող կինը ապրում էր IV դարում, Արշակունեաց Տիրան թագաւորի որդի Արշակ Բ.-ի օրով։ Սիւնեաց Անտովկ իշխանի գեղեցիկ և պարկեշտ դուստր Փառանձեմի հետ ամուսնանում է Արշակի եղբօրորդի Գնէլը։ Նախանձից կուրացած Տիրիթը՝ Գնէլի հօրեղբայրը, մտադրվում է գեղեցիկ Փառանձեմին իր կինը դարձնել։ Այդ նպատակին հասնելու համար նա, խտրութիւն չդնելով միջոցների մէջ, կարողանում է բամբասանքների շնորհիւ Արշակին համոզել՝ սպանելու Գնէլին, որը իբր թէ աշխատում է խլել Արշակի ձեռքից արքայական գահը։ Արշակը խորամանկ ձևով հրաւիրում է Գնէլին գալ և մասնակցել իր հետ նաւասարդի տօներին։ Եւ երբ Գնէլ Փառանձեմի հետ պալատ է մտնելիս լինում, յանկարծ վրայ են յարձակվում թագաւորից նշանակուած մարդիկ և Գնէլին տանում են սպանելու։ Փառանձեմ անմիջապէս վազում է Ներսէս կաթողիկոսի մօտ, որ այդ միջոցին պատարագ էր մատուցանում, և բարձրաձայն աղերսում է նրան շտապել և փրկել իր ամուսնուն։*

Ներսէսն իսկոյն, թողնելով պատարագը, շտապում է Արշակի մօտ. բայց սա սուտ քնել է ձևացնում, մինչև որ Երազմակ դահճապետը մտնում է թագաւորի մօտ և զեկուցանում է Գնէլի սպանութեան մասին։ Այն ժամանակ Ներսէսն անիծում է Արշակին, որը, այնուամենայնիւ, մեծ շուքով ողբում է իր «սիրեցեալ», «Արշակունեաց մեծ սեպուհ» Գնէլի մահը։ Այնուհետև Արշակ, հաւաստիանալով սպանութեան բուն շարժառիթները, մանաւանդ երբ Տիրիթ ամեն միջոցներով փորձում է գրաւել սգաւոր Փառանձեմին, հրամայում է սպանել Տիրիթին ևս։ Իսկ յետոյ Արշակը իրան կնութեան է առնում սիրուն Փառանձեմին։

Բայց, ըստ Փաւստոսի, «որչափ սիրէր արքայն Արշակ զկինն, նոյնչափ ատեաց կինն զարքայն Արշակ»։ Գրգռելու համար Փառանձեմի խանդը, Արշակը Յունաստանից բերել է տալիս Ոլիմպիադա անունով օրիորդին, որի հետ ամուսնանալով՝ սիրում է նրան ջերմագին։ Փառանձեմ չհանդուրժելով դրան, սոսկալի ոճիր է գործում, այն է՝ արքունի Մրջիւնիկ քահանայի ձեռքով թունաւորել է տալիս իր մրցակից Ոլիմպիադային հաղորդութեան ժամանակ։

Ահա այս է ծառայել իբրև նիւթ Մ. Գէորգեանի համար իր «Փառանձեմը» գրելու։ Չէ բերուած պատմութեան վերջաւորութիւնը, այսինքն՝ որ, Արշակ Բ.-ի Պարսկաստանում բանտարկուելուց յետոյ, Փառանձեմ թագուհին ամրանում է Արտագէրս բերդում և, երեք տարի դիմանալով պարսիկների պաշարման, վերջ ի վերջոյ անձնատուր է լինում՝ շնորհիւ հայր մարդպետ ներքինու՝ իր թշնամիներին, որոնք գերի են տանում Փառանձեմին Տիզբոն, ուր և նա Շապուհ արքայից-արքայի հրամանով ցցի է հանվում։

Սակայն Գէորգեանի «Փառանձեմը» հիւսուած է վերոյիշեալ պատմութիւնից—մինչև այս վերջաբանը—անբնական տեսիլներով, թքով կպցրած նախադասութիւններով, եղած անցածի մասին նաղլ անելու հինգ երկար արարուածների մէջ, որոնք շաղկապուած՝ թիւրիմացութեամբ դրամա անունն են կրում։ Այսպէս՝ 1-ին գործողութեան մէջ Արշակ Բ. պատմում է Գնէլին սպանել տալու և գեղեցիկ Փառանձեմին իրան կնութեան առնելու մասին Դրաստամատի ներկայութեամբ. 3-րդ գործողութեան մէջ Փառանձեմ իր առանձնասենեակումն է և կատարուած ոճիրի ազդեցութեան ներքոյ տանջվում. 2-րդի մէջ մի քանի իշխաններ զրոյց են անում անկապ թեմաներով, և Արշակը իր կրքոտ սէրն է արտայայտում Փառանձեմին. 4-րդի մէջ հանդէս է գալիս Ոլիմպիադան, որի առաջ Արշակը ստորացնում է յամառ Փառանձեմին, և, վերջապէս, 5-րդ գործողութիւնը ամբողջովին նրա մասին է՝ թէ ինչպէս Փառանձեմ խոստովանում է, որ ինքն է սպանել տուել Ոլիմպիադային։

Կրկնում ենք, այս ամենը շարադրուած է արհեստականօրէն և շատ հեռու է գեղարուեստականութիւնից։

Նախ ջանանք հակիրճ կերպով տալ Արշակ Բ. արքայի

քաղաքական շրջանի մօտաւոր պատկերը, մի շրջան, որ վարպետ գրչին կարող է հոյակապ նիւթ տալ մի ցնցող ողբերգութեան...

Հայաստանը այդ ժամանակներում (IV դարի կէսերին) դարձել էր իսկապէս մի կռուախնձոր երկու ուժեղ պետութիւնների միջև — Պարսկաստանի և Յունաստանի։ Շապուհ խորամանկ արքայից-արքան և յունաց կայսրը ոչ մի միջոց չէին խնայում տիրապետելու համեղ պատառին, որպիսին հանդիսանում էր մեր երկիրը։ Տեսնում ենք արդարև, թէ ինչպէս վառ գոյներով են նկարագրում այդ աղէտալի շրջանը պատմագիրներ Մ. Խորէնացի, Փաւստոս Բիւզանդ և ուրիշները, որոնց ասելով հայոց երկիրը քայքայվում էր և փտավում քաղաքականապէս և մօտենում էր անկման։ Իսկ գլխաւոր պատճառը կայանում էր հայ թագաւորների թուլութեան ու անզօրութեան և հայ նախարարների անմիաբանութեան մէջ, որոնցից իւրաքանչիւրը ամեն րոպէ պատրաստ էր դաւաճանել իր թագաւորին և իր զօրքերով անցնել պարսիկների կամ յոների կողմը։

Հապա Արշակ Բ.-ի դէ՞մքը։ Եթէ լսենք երկարաբան Փաւստոսին, յանձին Արշակի մենք տեսում ենք մի անհաստատական, քաղաքականութիւնից զուրկ, թուլամորթ և հեշտասէր թագաւորի, որ և առիթ էր տալիս պարսիկներին և յոներին շարունակ արշաւանքներ գործել դէպի իր երկիրը։ Մինչդեռ Խորէնացին աւելի բարձր է դասում Արշակ Բ.-ին, որի քաղաքագիտութիւնը, ըստ Խորէնացու, հետամուտ էր երկպառակութիւն սերմանելու պարսիկների և յոների միջև, որպէսզի նրանց թշնամութիւնից օգտուի ինքը, ամրացնելով Հայաստան աշխարհի սահմանները։ Յամենայն դէպս, Արշակ Բ. մի խոշոր անձնաւորութիւն է հանդիսանում IV դարում։

Գէորգեանը, Արշակին չպատկերացնելով իր իսկական դէմքով, թէկուզ բացասական յատկութիւններով ըստ Փաւստոսի, բնորոշել է նրան սոսկ սիրոյ ստրուկ և իր տափալից սիրոյ առարկային ձեռք բերելու ձգտող անգոյն էակ։ Եթէ Գէորգեանը հետևողական լինէր, պէտք է խտացնէր գոնէ այդ մասը, հանդէս բերելով Արշակին այնպիսի մարդ, որ իր սիրեցեալ կնոջ սիրտը գրաւելու համար չէ խնայում թագաւորավայել և ոչ մի զոհողութիւն։ Մանաւանդ որ՝ Գէորգեանի նպատակն է եղել, թւում է, յանձին Արշակ թագաւորի պատկերացնել սիրոյ կրքերով ու բռնկումներով ապրող մարդու և։ Ասենք, պատմութեան թելադրանքի կօշմարի տակ, Գէորգեանը Արշակ թագաւորին մի-մի անգամ զայրացկոտութեան ու նեղսրտութեան էլ է հասցնում։ Բայց Մամիկոն Գէորգեանի տուած բնաւորութեան արտայայտութիւնը այն աստիճանի անգոյն է, որ ահարկու և գոռոզ Արշակը իր հեշտասէր ցանկութեանը բաւարարութիւն տալու համար ինչ-որ պառաւական միջոցի է դիմում. նա սիրոյ թմրեցուցիչ ըմպելիք է տալիս Փառանձեմին...

Գոնէ Գէորգեան այնպէս ցոյց տար, որ Արշակը միայն բռնութեամբ է գործում ամեն բանում, բայց այն ժամանակ էլ

գուցէ թէ Գէորգեանի «դրաման» իր միակ պատուանդանը խախուտ երևցնէր…

Ընթերցողը կը կարծէ, որ ուրեմն յարգելի հեղինակը կենտրոնական անձի՝ Փառանձեմի վրայ պէտք է թափած լինի իր «դրամատուրգային» գրչի ամբողջ կարողութիւնը։ Բայց այստեղ էլ ոչինչ մխիթարական։ Միջանկեալ ասենք, որ Փառանձեմ ըստ էութեան այնքան էլ խոշոր դեր չէ խաղում Արշակ Բ.-ի էպօխայի որակի նկատմամբ։ Ծանրութեան կենտրոնը ինքը Արշակն է, որի կեանքի ճշգրիտ պատկերացումը բեմի վրայ, ինչպէս նկատեցինք, վարպետ գրչի շնորհիւ լիուլի հասկացողութիւն պէտք է տայ այն ժամանակուայ հայկական կեանքի մասին՝ քաղաքական և տնտեսական-կենցաղավարական տեսակէտներից։ Փառանձեմ իրապէս մի կողմնակի գործող է։ Առանձնապէս կանգ է առել նրա վրայ Բիւզանդը իբրև ոչ-դրական տիպի վրայ և մկրտում է նրան «անօրէն և ամենևին յԱստուծոյ ոչ երկնչէր» և նման դարձուածքներով։

Սակայն Փառանձեմի ուրոյն կերպարանքը հարազատութեամբ տալով, դրամատուրգը կարող է շնորհալի կերպով տալ միջավայրի պատկերը պարզ գծերով, նոյնիսկ Փառանձեմին անցկացնելով հոգեբանական վերլուծման բովից։ Վերջին դէպքում կարելի է օգտուել նմանապէս պատմութեան վախճանից, այսինքն երբ Փառանձեմի արիութիւնը և խելօքութիւնը տեսնում ենք Արտագէրս բերդում պաշարուած ժամանակ։ Նա, ըմբռնելով Հայաստանի տարտամ քաղաքական վիճակը, փորձում է նուիրուած իշխանների և իր Պապ որդու օգնութեամբ դիմադրել պարսիկներին։

Կամ գոնէ Գէորգեանը Փառանձեմից ստեղծէր լոկ «radix malarum»․

Ոչ մինը յիշածներից։ Այն ինչպէս է պատահում, որ, ըստ Գէորգեանի, սկզբում հեզաբարոյ, իր սիրելի ամուսնու ցաւալի մահը ողբող Փառանձեմը վերջում փոխվում է ամենայանդուգն ոճրագործի։ Եթէ նրա մէջ զարթնում է անկեղծ սէր առ Արշակը—մանաւանդ յղիութիւնից յետոյ—ապա ուրեմն նա յիրաւի դառնալու էր հերոսուհի, մի արի կին, որի արդարացումը Գէորգեանը կը գտնէր, համաձայն վերևում մեր ասածի, նրա՝ Արտագէրս բերդում ամրանալու և թշնամիների դէմ պաշտպանուելու իրողութեան մէջ։

Գէորգեանի դրաման նման է այն կանըվային, որի վրայ կան երփներանգ գոյներ խառը, անկանօն, մինչդեռ աչք էր ծակելու կարմիրը կամ սպիտակը…

Մենք կանգ չենք առնում այն բազմաթիւ դեֆեկտների վրայ, որոնցով լի է պիէսը։ Թագաւորի պալատը, երևակայիր, ընթերցող, մի տեղ է, ուր ուզող-չուզողը կարող է դուրս ու տուն անել, առանց որևէ զեկուցման։ Պահապան զինուորների նմուշը չկայ։ Թագաւորը ամեն անգամ երևում է առանց թիկնապահների, առանց պատշաճ երթի, առանց ծիրանու։ Բնակարանները, կահ կարասիքը, նիստուկացը, զգեստները այն-

քան հեռու են բիւզանդական և առաւել պարսկական ազդեցութիւնից, որքան հեռու են երկինքը և գետինը միմեանցից։ Գործողութիւնները կատարվում են կարծէք նախասենեակներում, և հանդիսատեսը մշտական սպասողական դրութեան մէջ է, թէ ա՜ա կը տեսնէ ապարանքը իր բովանդակ տեսքով և կը սկսուի «դրաման»... Տիկինների հագուստը բաւական աջող նմանվում էին պարիզեան XX դարի վերջին մօդային, իսկ տուալէտը, տեկօլտէն մեզ մտքով վերացրին երանելի IV դարը... Արշակը իր հրաշագործ սիրոյ բալասանից յետոյ ուզում է բռնաբարել Փառանձեմին մի երրորդ անձի ներկայութեամբ, և այլն, և այլն...

Բայց... չշարունակենք։ «Փառանձեմը» զուրկ լինելով միանգամայն դրամայի իդէայից, հոգեբանական տարրերից, հետևողականութիւնից, բնաւորութիւնների վերլուծական զարգացումից՝ չէ կարող ապրել հայկական րեպէրտուարում իր այժմեան կերպարանքով, և, թւում է, նրա համեմատական աջողութիւնն անգամ կախուած կարող է լինել ամենալուրջ ու հիմնական վերամշակման և վերակազմութեան պայմանից։ Գէորգեանի այժմեան «Փառանձեմը» կարող էր լաւ պատկեր դառնալ սինեմատօգրաֆների համար, որտեղ միայն նայում ենք գործողութիւնների և ուրիշ ոչինչ։ Սակայն այստեղ էլ, թւում է, անաջողութեան է հանդիպելու նա, քանի որ իսկապէս գործողութիւններ չկան, այլ կան միայն «պատմութիւններ» անցած-կատարուածի մասին։ Պատմութեանը անծանօթ մարդու համար, Գէորգեանի պիէսի մէջ չեն երևում ո՛չ Վասակ Մամիկոնեանի քաջարի անուան հետ կապուած գործերը, ոչ Դրաստամատի անձնուիրութիւնը. նոյնը և մնացածների վերաբերութեամբ։ Իսկ եթէ մի րօպէ ընդունենք, որ պատմութիւն չը կայ, այն ժամանակ ի՞նչ տպաւորութիւն կը ստացուի «Փառանձեմ» դրամայից։ Ոչինչ. սոսկ պատմող մարդիկ, որոնք մի գործողութեան մէջ էլ կարող էին երևան գալ...

Մենք գուցէ այսքան երկար չծանրանայինք Գէորգեանի պիէսի վրայ, եթէ նա ինքնուրոյն գրուածք չլինէր։ Դեռ վերջերս միևնոյն անաջողութեան հանդիպեց և տապալման մատնուեց մի նոր ինքնուրոյն «դրամա» ևս, որի քննադատութեամբ զբաղուեցին «վանդալ» և «ոչ վանդալ» քննադատներ։ Եւ ցաւ ի սիրտ պէտք է ասել, որ մեր աղքատիկ գեղարուեստական-թատրօնական անդաստանին դեռ վիճակուած չէ հարստանալ ինքնուրոյն աջող, ամբողջացած պիէսներով։

Ե.

# ՄԱՏԵՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

«Journal Asiatique», Tome XVI. № 3, 1911

Վերջերս լոյս տեսած Պարիզի Ասիական Ընկ. այս հռչակաւոր հանդէսի մէջ, ի միջի այլոց, տպուած է Մ. Ա. Մէյէի մի մեծ յօդուածը «Remarques sur le texte de l'histoire arménien Agathange» վերնագրով։ Յօդուածագիրը քննութեան է առնում Ս. Մալխասեանցի խմբագրութեամբ և Սուքիաս արքեպ. Պարգեանցի ծախքով հրատարակուող Պատմագիրք Հայոց ժողովածուի Ագաթանգեղոս հատորն և իր եզրակացութեան մէջ այն միտքն է յայտնում, թէ հայագիտութեամբ պարապողները (les arménisants) պէտք է Ագաթանգեղոսը կարդան այս հրատարակութեամբ, որ ամեն կողմից մի թանգագին հրատարակութիւն է։

«Նախնական հրատարակութիւնը հայկական ինքնուրոյն բոլոր հին հեղինակների, որոնց ձեռագիրները կան,—ասում է նա,—կատարուել է վաղուց։ Վենետիկի Մխիթարեանները, որոնք իրանց կողմից տուել են բազմաթիւ երկերի առաջին հրատարակութիւնը, ունեցել են ամենից շատ այն արժանիքը, որ հայթայթել են, XIX դարի առաջին կէսի ընթացքում, ընթեռնլի և յարմար հրատարակութիւններ իրանցից առաջ լոյս ընծայած բնագիրների մեծ մասի։ Բայց այդ հրատարակութիւններն, որոնց օգտակարութիւնը շատ մեծ է եղել, նմանում են շատ կըլասիք հեղինակների առաջին հրատարակութիւններին, որոնց միջոցով անհնարին է կօնտրօլի կամ վիճաբանութեան ենթարկել հրատարակիչների բռնած եղանակը։ Եթէ դուք զբաղւում էք լեզուով, գրականութեամբ կամ պատմութեամբ, դուք չէք կարող գնահատել մինչև այսօր հրատարակուած հայկական գլխաւոր բնագիրների արժէքը։ Եւ մանաւանդ ցաւալի է այն հանգամանքը, որ մենք չունենք ոչ մի վաւերագիր, էպիգրաֆիական կամ ձեռագիր, որի օգնութեամբ կարողանայինք որոշել անկասկած լեզուի վիճակը V դարում, այսինքն հայկական կլասիք գրականութեան րօպէին, որովհետև չկայ ոչ մի հայկական արձանագրութիւն՝ մնացած V դարից»։

Ապա հեղինակը, յայտնելով որ 20 տարուց ի վեր հրատարակուել են բազմաթիւ գրացուցակներ հայկական ձեռագիրների ժողովածուների, որոնց մէջ ուշադրութեան արժանի են հայր Դաշեանի հոյակապ գրացուցակը և Աճառեանի ու Մակլէրի հրատարակածները, խօսելով Էջմիածնի մատենադարանի ճոխ հարստութեան մասին, կցում է.

«Ուրեմն այժմ հասկացել են հայկական հին մատենագիրների քննադատական հրատարակութիւններ լոյս ընծայելու անհրաժեշտութիւնը, որոնք միայն կարող են լուծել պատմական և գրական կարևոր հարցեր և այդ հարցերի լուծումից յետոյ միայն կարելի կը լինէր ձեռնարկել հայկական գրականութեան պատմութիւնը գրելուն»։

Ահա այդ տեսակէտից Մէյէ մեծ կարևորութիւն է տալիս Գ. Տէր-Մկրտչեանի (Միաբանի), Ստ. Մալխասեանցի և Ս. Կանայեանի ջանքերով լոյս տեսնող հատորներին։ Հ. Ա.

Խմբագիր-հրատարակիչ Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

Տպարան «Է Պ Օ Խ Ա», Գանօվսկայա № 3.

# ԱՐՕՐ

## ՄԻԱՄՍԵԱՅ ՀԱՆԴԷՍ

ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՐԱԿԱՆ, ԳԻՏԱԿԱՆ-ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ
ԵՒ ԻՆՔՆԱԿՐԹԱԿԱՆ.

Ը ՏԱՐԻ — Ը ՏԱՐԻ

ՄԱՅԻՍ-ՅՈՒՆԻՍ

№ 5—6

1911

ԹԻՖԼԻՍ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Գրական
ԳԻՏԱԿԱՆ
Հասարակական-
ՔԱՂԱՔԱԿԱՆ
խաղաղասիր.
ՀԱՆԴԷՍ

# ԱՐՕՐ

ԵՐԿՐՈՐԴ տարի
ԹԻՖԼԻՍ
1911 Թ.
ՄԱՅ.-ՅՈՒՆԻՍ
№ 5—6

## ԲԱՑԻԿ

Մարգօն հետաքրքրութեամբ ալբօմն էր թերթում։ Բացիկներ շատ կային, պէս պէս ճաշակի։ Բայց աւելի նուրբն էր որոնում, աւելի նորատեսը։

Յաճախ էր գալիս այդ գրախանութը, որը և՛ յայտնի փողոցի վրայ էր, և՛ գիմնազիային մօտ, և, գլխաւորը, ամենաթարմ նորութիւններ էր ունենում գեղարուեստական աշխարհից։

Այս անգամ դժուարանում էր ընտրել։ Երկրորդ անգամ ալբօմը թերթեց։ Բայց ուշն ու միտքը չէր կանգնում մէկի վրայ։ Բացիկները և շատ էին, և խիստ գեղեցիկ։ Քիչ էլ անհանգիստ էր իրան զգում։

Տարօրինակ էր թւում, որ Ժօրժիկը լինէր պատճառը։ Երկար ժամանակ չէ, որ ծանօթ է նրա հետ։ Պատահել են մի քանի անգամ, կարճ խօսել, երբեմն երեկոյթներում պարել։ Ամենասովորական երևոյթը։ Առանձին ոչինչ չկայ, եթէ կամենում է նրա տօնը շնորհաւորել, այն էլ՝ մի համեստ բացիկով։ Չէ՞ որ ինքն էլ իր ծննդեան օրը ստացաւ նրանից բացիկ ու ծաղկեփունջ՝ ընկերուհու միջոցով. ծաղկեփունջ... Թեթև ժպտաց, նայեց շուրջը։ Բայց նրան նայող չկար. ծառայողները միւսների հետ էին զբաղուած։

Մարգօն ժպտաց։ Բայց ո՞ր մէկն ընտրի։ Ահա մէկը. հանգիստ լիճը՝ գիշերային նիրհով ընկղմուած։ Լուսինը բարձրացել է հօրիզոնից և իր արծաթափայլ շողերով գուրգուրում է լիճն ու ծառերը հեռաւոր, որոնք խորհրդաւոր ստուերներով պատել են լճափը։ Գիշերը լռիկ, լուսինը բարձրում, ցածրում լիճը նիրհած ու մեծ ստուերախիտ ծառերն ա՛հաւոր անտառի՝ բնութեան

այդ մեղմութիւնը, տխրող անդորրութիւնը, մտորումների մօմենտը՝ իսկապէս գրաւիչ է։

Բայց... այս միւսը՝ ամառային օր՝ բարձր, գանգուրատերև կէճիների միջից դանդաղ-դանդաղ հոսում է լայն գետը, օձի նման ոլորվում, պտտվում և նազանքով սարսռում կամ հայելի մնում ու փայլում արևի ճառագայթներից, որպէս ձուլուածք արծաթի։ Փոքրիկ-փոքրիկ ալեակները ծփում-համբուրում են ափերը ծաղկաւէտ և գողտրիկ գուրգուրանքով իրանց գիրկը կանչում լողացող երիտասարդներին, որոնք՝ մերկացած՝ ջուրն են շտապում կանաչը կողոտելով։ Այնպէս գրկել ու ողողել է բոլորին արևի ջերմութիւնը, արևի լոյսը, կեանքի աղբիւրը, այնպէս դիւրագրգիռ, այնպէս կենդանի է ամեն մի ժպիտը մատաղ դէմքի, ամեն մի սօսափիւնը կանաչ տերևի, ամեն մի շըշնջիւնը բուրաւէտ ծաղկի...

Երկու բացիկների ֆոնն էլ հարուստ է, խիստ գրաւիչ։

Բայց ահա մի ուրիշը՝ կեանքի երեք փազը։ Առաջինը՝ մանկութիւնը, որ փոքրիկ անմեղ երեխայ է և քայլում է ծըծմայրի օգնութեամբ. փափլիկ գառնուկ երեխայ մերկ ոտիկներով ու միամիտ գառնուկ աչիկներով, որոնք լի են երկնային մաքրութիւնով։ Երկրորդը՝ մի կոյս է նազելի, մի ծաղիկ հասակ, որ ծաղիկներով է շրջապատուած. ծաղիկները սէր ու անմեղութիւն են բուրում, կոյսի սիրտը լցնում. սիրտը սիրով է բաբախում, կոյսը սիրել է կամենում, ապրել է կամենում. իսկ կոյսի ետևից թևաւոր Ամուրն է համբոյրով մօտենում։ Երիտասարդութիւն, սէր ու երջանկութիւն։ Երրորդ փազը՝ դալկադէմ հասակն է ծերութեան, որ նստած սևազգեստ՝ նայում է անցեալին, անցեալը վերապրում, յիշողութիւններով կեանքը լցնում։

Ահա մէկն էլ։ Կանգնած է ծովափին մի կոյս նազելի և քնարը ձեռին երկնին է նայում փայլուն աչքերով։ Մաղաշարժ մատները սահում են լարերի վրայով, կայծեր արձակում անտես, հրային։ Կոյսը և՛ նուագում է, և՛ երգում յուզուած ու տարուած։ Կարծես կենդանի է, շարժվում է, կարծես լսվում են դիւթիչ ակկորդները։ Ծովը յուզուած դէպ կոյսն է նետվում վճիտ ալիքներով. կարծես իր ակկորդներով, իր համերգով փարուել է կամենում, գգուել, փայփայել է կամենում գեղանի կոյսին։ Լազուր երկինքն էլ ժպտում է կոյսին, դէպ անհունը կանչում հազարաւոր փայլերով, հազարաւոր երազներով...

Ահա և մի հէքեաթ, կախարդական հէքիաթ։ Երիտասարդկին, լի կուսական մաքրութիւնով, կանգնած յենուած է նժոյգին։ Կարծես փերի է, կախարդական՝ ոգի, որ անտառի միջից,

բարձր ծառերի արանքից, թփերից ու ծաղկաւէտ կանաչներից նայում է առաջ խոր հայեացքով, որ խոր ծովի է նմանում։ Բարձր հասակը, վայելուչ կազմուածքը, նուրբ դիմագծերը, շըքեղ մազերը գեղանի ուսերին, հոլանի թևերը յետ ծալած ու քնքոյշ գլխիկը մի ուսին թեքած, նազելի մարմարեայ կուրծքը կիսաբաց, գանգուրներով կիսածածկ, երազելու, սիրելու, ապրելու թախիծը երկնափայլ աչքերում՝ այնպէս զմայլիչ է, այնպէս հէքեաթային... Իսկ կողքի նժոյգը սպիտակ, բարձր ու ուժեղ, փարթամ բաշով՝ դէպ տիրուհին գլուխը թեքած այնպէս բարի աչքերով է նայում, այնպէս խոնարհ ու հաւատարիմ, այնպէս սլացող ու նպատակի հասնող է երևում... Ամբողջ կօլօրիտը բացիկի այնպէս գեղեցիկ է, հմայիչ, այնպէս կախարդիչ է, նուրբ հէքեաթային իր ներքին մտորումներով, ներքին իմաստով...

Մարգօն վճռեց այդ բացիկն ուղարկել։

Թեքուեց ժպտադէմ. նրան էր նայում նստած կասսիրշան։ Անփոյթ վճարեց, դուրս եկաւ։

Ժամացոյցին նայեց. բաւական ուշացել էր։ Տուն շտապեց։

Մեքենայաբար աչքն ընկաւ «Նիցցա» ծաղկեխանութին։ Այնպէս գեղեցիկ, այնպէս թարմ էին վարդն ու շուշանը, նարկիսն ու արքայածաղիկը, մեխակն ու հիացինտը, որ այլ տեսակներով բոլորուած այնպէս ժպտում էին գողարիկ ու կանչում նայողին։

Կանգնեց Մարգօն, նայեց հիացմունքով։

Մտքովն անցաւ մի փունջ գնել, ուղարկել։ Բայց... դա արդէն չափազանց կը լինէր. դա արդէն պարզութիւն էր։ Եթէ նոյնիսկ հետաքրքրվում է Ժօրժիկով, պէտք է թաքցնի. այդ է թելադրում կանացի տակտը։ Ինքշօրէն մէկ էլ նայեց ծաղիկներին ու առաջ քայլեց դիւրաշարժ։ Տուն հասաւ, մտաւ իր սենեակը։ Նորից նայեց բացիկին, գոհ մնաց ընտրութիւնով. Բայց... ի՞նչպէս շնորհաւորել. առանց ստորագրութեա՞ն։ Ոչ, գուցէ չիմանայ։ Լրիւ անունով էլ լաւ չէ ստորագրել։ Աւելի յարմարն է Մ. սկզբնատառը։ Թող գտնի՝ ով է։ Կարող է կասկածել, որ Մանիան է... գիտէ, որ Մանիան էլ է նրանով հետաքրքրվում։ Մանաւանդ որ նրա, Մարգօյի, գիրն էլ չէ տեսել։ Աւելի լաւ, թող կասկածի։

Անցաւ դահլիճ, մօտեցաւ դաշնամուրին։ Բացեց նօտաները՝ դասը սովորելու։ Տրամադրութիւն չկար։ Հանեց ռոմանսները, նուագեց սիրածները։

Սիրում է Ժօրժիկին,—հարցրեց ինքն իրան թեթև ընդմի-

ջումով։—Դժուար թէ։ Բայց մտածում է նրա մասին, ցանկանում է հանդիպել, ուրախանում է՝ երբ տեսնում է, թէպէտ ծածկում է։ Ջերմին անտարբեր չէ, հետաքրքրվում է նրանով և շատ հետաքրքրվում։ Իսկ Ժորժիկն էլ հետաքրքրվո՞ւմ է...

Եթէ ոչ, ինչո՞ւ է յաճախ պատահում, ինչո՞ւ է երեկոյթներում նրա հետ պարում, ինչո՞ւ նրա ծննդեանը բացիկ ու ծաղկեփունջ ուղարկեց...

Շարունակեց նուագել։

Գուցէ և սիրում է Ժորժիկին,—նկատեց նոր ընդմիջումով։

—Ապա ինչո՞ւ է այնքան մտածում, ինչո՞ւ է հպարտանում ծածուկ, երբ գովասանք է լսում նրա մասին, նրա ազնուութեան ու վարքի մասին։ Բայց դժուար է հաստատել։ Դեռ կարճ ժամանակ է, ինչ գիտեն մէկ մէկի։ Ապագան ցոյց կը տայ։

Իսկ ապագան այնքան անորոշ էր, բայց այնքա՜ն գրաւիչ։ Երկու տարուց յետոյ աւարտում է գիմնազիան, իսկ Ժորժիկը մէկ տարով առաջ։ Ժորժիկն ի հարկէ համալսարան կը մտնի, իրաւաբանական մասը, ինչպէս լսել է նրանից։ Ինքն էլ կուրսերն է ձգտում։ Մայրաքաղաք կը գնայ։ Ծնողները թէպէտ կը հակառակուեն սկզբում, բայց վերջը կը զիջեն։ Բարձրագոյն ուսում, նոր տեղեր, նոր դէմքեր... Օ, այնքա՜ն նորութիւններ, այնպիսի՜ տպաւորութիւններ, այնպիսի՜ կեանք կը լինի այն ժամանակ...

Եւ Մարգօն տարուեց լազուր ապագայով։

Իսկ մատներն աննկատ սահում էին կլաւիշների վրայով, մերթ բարակ-բարակ սրտաճմլիկ ակկորդներով, մերթ էլ սըրընթաց ելևէջներով, փոթորկալից թնդիւններով...

ՍՏ. ՕՀԱՆԵԱՆ

# ՀՐԱԺԵՇՏ

...Տանում էին իմ բարեկամին հեռու տեղ, եւ ես շտապում էի դէպի բանտ՝ տեսնուելու նրա հետ, որովհետեւ էլ երկար տարիներ իրար երես չպէտք է տեսնէինք։ Քայլում եմ տըխուր ու տրտում. մի բան արճճի պէս ճնշում է կուրծքս ու տրորում։

Վերջապէս հասայ բանտի բակը. բազմաթիւ այցելուների հետ ես էլ կանգնած սպասում եմ բարեկամիս։ Բոլորն սպասողական դրութեան մէջ են. կան օրիորդներ, որոնք անհանգիստ շարժումներ են անում ու տխրադէմ աչքները յառում բանտի երկաթեայ դռան, որտեղից պիտի դուրս գան բանտարկեալները, որոնց թւում կը լինի իրանց՝ կամ եղբայրը, կամ բարեկամ-ազգականը և կամ վերջապէս սիրեցեալը։ Կան՝ երկուտակուած, վշտի ծանրութեան տակ կռացած՝ սեւաքաղ մայրեր. նրանք մրմնջում ու լալիս են արիւն-արցունք... Կան ջահել տիկիններ, որոնց՝ կեանքում վիճակուել է սեւ օրեր տեսնել՝ ամուսինների ձեռքից։ Խառնուած են՝ երիտասարդներ, հասակաւորներ և ծերեր։ Տխուր ու մռայլ դէմքերի մի ամբողջ շարք։

Շը՛խկ, շը՛խկ, շը՛խկ... Լսուեց շղթաների տխուր ու մելամաղձոտ շառաչը։ Երկաթեայ դուռը բացուեց. տխուր թափօրը առաջ եկաւ...

Մաշուած, գունատ, սիրտ մաշող դէմքեր. ժանգոտ շղթաներում ամուր պրկուած ոտքեր. նիհար, վտիտ բազուկներ. շատերի այտերի վրայ կախուած են արցունքի դողդոջ շիթեր...

Թափօրը կանգ առաւ. տարագրուողները՝ արտասուաթոր աչքերով որոնում են ծանօթ դէմքերի... Ծանօթներ, բարեկամներ՝ լալով, աղաղակով նետւում են դէպի իրանց սիրելիները՝ ջերմապէս համբուրւում, խօսակցում...

Նայում եմ երկար. չկայ բարեկամս։

«Միթէ նրան տարել են»,—մտածում եմ ես ու նայում այս ու այն կողմ։

Բանտարկեալներից մէկը կանգնել է հեռու ու դիտում է

շուրջը։ Նինար, այտոսկրները ցցուած, աչքերի փայլը շիջած, մի թախծադէմ երիտասարդ է։

«Չլինի՞ նա է»,—մտածեցի. բայց բոլորովին նման չէր։

Մեր հայեացքները հանդիպեցին իրար։ Նա շարժուեց դէպի ինձ ու՝

—Հը՛, չես ճանաչո՞ւմ,—ասաց և համբուրեց ինձ։—Փոխուել եմ, այնպէս չէ՞…

Խօսք չգտայ պատասխանելու. ապշել էի. նա շարունակեց.

—Այո՛, այնպէս եմ փոխուել, որ ոչ ոք չի ճանաչի… քեզ չեմ մեղադրում. այսպէս է, ինչ արած. կեանք է, պէտք է…

Նա էլ չկարողացաւ շարունակել. արցունքը խեղդեց նրան, և խօսակիցս սկսեց հեկեկալ։

—Ոչինչ, եղբայր, յոյս ունեցէք, միք տխրի…

Միայն այսքան մխիթարելու կարողութիւն ունեցայ. արցունքս այրեց աչքերս։

—Գնում եմ, սիրելիս, յաւիտեան գնում։ Բարև կը տանես խեղճ մօրս… կասես նրան, որ իրան չտանջի…

—Յոյս ունեցէք,—ապուշի պէս կրկնեցի ես։

—Ինձ մխիթարել ու յոյս տալ՝ այլ ես աւելորդ է,—ասաց նա, և արցունքի կաթիլները կախուեցին նրա մաշուած այտերի վրայ։—Մխիթարիր նրան, բարեկամս. ես գնում եմ արդէն… Համբուրուենք… միաս բարև։

—Օ՜, մի յուսահատուիր, եղբա՛յր, դուցէ…, — անկապ դուրս տուի ես։

—Շնորհակալ եմ, բարեկամ, շնորհակալ եմ,—լացակումած մրմնջաց նա ու խառնուեց տարագրուող ընկերներին…

Շը՛խկ, շը՛խկ շը՛խկ… Վերստին շառաչեցին շղթաները։ Խումբը առաջ գնաց։

Հեռո՜ւ, շատ հեռո՜ւ տեղ էին գնում, այնտեղ՝ որտեղից չը կայ դարձ։

Նրանք գնացին յաւիտեան և ընդմիշտ քաւելու իրանց մեղքերը։

ՍՏ. ՎԱՀԱՆԵԱՆ

# ՄԻ ԺԱՄ

(Փետրուարի 19-ին)

—

Հերոս էր մի ժամուայ, անվեհեր հերոս՝ ամբոխն այն նիրհող…

Հինաւուրց քնից յանկարծ արթնացաւ, մոգական ոյժով արթնացաւ նիրհից, թմրեցնող մրափից։

Դարերով ճնշուած, դարերով ծանր լծի տակ խեղդուած՝ անձայն, հլու հպատակ՝ յանկարծ նա զգաց իր սրտի խորքում կուտակուած կսկիծ, մրմուռ-ցաւ զգաց, սրբազան սարսուռ…

Տանջանքի ճչից՝ արթնացաւ նիրհից… վշտից, խայթոցից ցնցուեց ու սոսկաց…

Մտաբերեց, յիշեց վաղեմի տառապանքը, անցեալը թախծոտ, ողբն ու լացն երկրի… Վէրքերն շարաւոտ, վէրքերն արիւնհոս մտաբերեց մի առ մի…

Յիշեց, զարհուրեց…

Ներկան դժնդակ, ներկան յուսաբեկ ակներև վկայեց…

Մոռացաւ մի ժամ՝ ամբոխն այն բորբոքուած՝ առօրեայ, չնչին հոգսերն անձնական, մոռացաւ նեխուած ճահիճը կեանքի…

Մարտահրաւէր յղեց թունաւոր օձին, թմրեցնող ոյժին և ապա դարձաւ՝

Մի ժամուայ հերոս…

Քաջ հերոս դարձաւ՝ բարձունքում սաւառնող, երկնքի աստղերի փայլի հետ մրցող…

Մի ժամ՝ ամբոխը առիւծ էր արքայազն… Արքայազն առիւծ, որի մէջ բունկվում է մարտնչող հոգին, յաղթական հոգին…

Տենչաց պատառել ցանցն ամրահիւս, երկաթակուռ շղթաները փշրել նա տենչաց, բանտ-վանդակը տապալել իսպառ…

Իր ոյժն հսկայական փորձել կամեցաւ՝ այն դիւցազն առիւծը…

Մոնչաց, յարձակուեց… Որոտ ու կայծակի մէջ փրկու-

թիւն որոնեց, լուսոյ աւետիք՝ շողակաթ լուսոյ։

Մի ժամ՝ նա կատաղի գետ էր, կոյր տարր բնութեան։ Կատաղի գետ էր՝ պատնէշներ ու վիհեր անվախ կործանող։ Իր զօրեղ հոսանքի մէջ խաղում էր ժայռերով, վէմեր տապալում խաղալիքի նման՝ իր զօրեղ հոսանքում...

Լայնատարած, մրրկածուփ ծով էր՝ ամբոխն այն աներկիւղ, փրփուր ժայթքող աներկիւղ, երկնքի ամպերի հետ մրրցող, շանթեր արձակող...

Այն ամբոխն անվեհեր ծով էր մրրկածուփ...

Արև էր աշխարհակալ, արև փայփայող... իր ջերմ համբոյրով, կաթոգին զգուանքով՝ կեանք ներշնչող։ Փայլուն ճաճանչներից շքեղաշուք պսակ էր հիւսում և իր ընտրեալին, իղձերի արտայայտիչ, հրապուրիչ ընտրեալին՝ պսակով զարդարում...

Կարճատև արև էր... Արև արշալոյսին ոսկեծին, ուժով, և վերջալոյսին... Մարող շողերի, վերջին հառաչքի, հրաժեշտի թախծոտ...

Մի ժամ էր միայն՝ արև փայփայող...

Առիւծը ննջեց, մրափեց խոր քնով... Մոռացաւ խելակորոյս վայրկեանները ցնծութեամբ. Մնացաւ ազատ հովիտների թարմաշունչ քամին...

Եւ գետը ցամաքեց, տօթից չորացաւ... Բիւրեղ ջրերը ցօղ-արցունք դարձան, դողդող կաթիլներն՝ ամպերում չքացան...

Ծովն անհուն լճեց վշտահար, խորտակեց խորքում իր փրփուրը ցայտուն, տենչերը խռովայոյզ...

Ամբոխն այն հզօր դարձաւ թոյլ, երկչոտ... Որոտի ահեղ պայթումից սոսկաց։ Լծի տակ իր շլինքը կրկին ծռեց, կեանքի անապատում անշուք նա լռեց։ Ամբոխն այն վհատուող, երկչոտ, տատանուող՝ պսպղուն նիզակն ու վահանը նետեց... յուսահատ նահանջեց և իր ընտրեալին՝ ընտրեալին պսակազարդ՝ բարձունքից տապալեց ու կրկին թմրած՝ խոր քնի մէջ ընկղմուեց, յարատև քնի...

ԿԱՐԻՆԷ

# ՁՄԵՌԱՅԻՆ ԵՐԳԵՐԻՑ

Իմ լուսատենչ, կարօ՜ղ հոգի,
Թէ չես յոգնել,
Ինձ տա՛ր այնտեղ, ուր ոչ ոքի
Դեռ չե՛ս տարել...

Արե՜ւ չկայ էս աշխարհում,
Արե՜ւ չկայ...
Զո՜ւր եմ այստեղ ես թափառում,
Ես զո՜ւր եկայ...

Հարաւային երկինքների
Օդով շընչած՝
Իմ յուսավառ բուրաստանի
Վարդը փըթթած,
Ա՜խ, ո՞նց ապրէ, ա՜խ, ո՞նց ապրէ
Այս աշխարհում,
Ուր ամէ՛ն ինչ պիտի խամրէ
Սե՜ւ խաւարում...

Տե՛ս, չորս կողմըս ձիւն ու սառոյց
Ե՛ւ բուք, ե՛ւ բորան,
Չկա՛յ ո՛չ լոյս, ո՛չ ուղեցոյց.
Ճամբէքըս կորա՜ն...

Մո՜ւթ է շուրջըս, համըր և լո՜ւռ,
Չեմ լըսում ո՛չ ոքի.
Դէպ ո՞ւր գընամ, ասա՛, դէպ ո՞ւր,
Ուղեցո՜յց իմ հոգի։

Ս. ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ

Պետերբուրգ.

# ՈՒՐՈՒԱԳԾԵՐ

I

## ՁՆԾԱՂԻԿ

*Մշտնջենական սառոյցն է իշխում այնտեղ, և ճերմակ սաւանով ձիւնը յաւիտենապէս գրկում է լեռների գագաթները, որտեղ այլևս դադարում է շնչել կեանքը։*

*Գեղեցիկ ջրվէժները համր մարդու նման լռում են, և երկնային լուսատուները սիրում են խաղալ ուշ գիշերներին ձեան թեփուկների հետ, որ այնպէս յիշեցնում է սադափէ կոճակները աղջկայ կրծքի վրայ։*

*Եւ այնտեղ ամեն օր քամին է վայում մեն-մենակ ու աղմկում մեծ լռութիւնն, իմաստուն լռութիւնը հպարտ բարձունքների։*

*Բայց ահա արևի տակ, ձիւների միջից, բարձրացաւ մի բոյս, պճնուած՝ որպէս հարս և փթթած՝ որպէս ծաղիկ։*

*Ձնծաղիկն է այդ։*

*Քշուած արևի ջերմութիւնից, բոլոր կեանքերից հեռու, նա լիքը կրծքով շնչում է սառն օդը, որ դաշտերում քարշ ընկած մարդուն անպայման կը վնասէր, և իր բաց թերթիկներով ձգվում դէպի արևը։*

*Շուրջը սառնութիւնն է իշխում, համր լռութիւնը հպարտ բարձունքների, և քամին վայում է լեռների վրայ որպէս տիրապետող տարր, ու նա ձիւնի թեփուկների միջից բարձրացնում է կուրծքը, մաքուր՝ որպէս շուշան և ազատ՝ որպէս միտքը։*

*Արևին ձգուող ու արևից հեռու կեանքն է ապրում այդ ձիւների տակ…*

*Եւ երբ գիշերը գալիս է, նա աւելի հպարտ կերպով բացում է իր բաժակները և անքթիթ նայում երկնի լուսատուներին, իմանալու համար թէ ինչ կրակից են վառվում նրանք, որ այնպէս իր թերթիկների նման պայծառ են։*

Յաւիտենական ձիւնն ու սառոյցը չեն կարողանում խեղդել Նրան, և Նա աճում է այնտեղ որպէս իմ սիրտը արևից հեռու, բայց արևին ձգուող համր լռութեան մէջ հպարտ բարձունքներում...

## II

## ԳԵՂԵՑԿՈՒԹԻՒՆ

Ես Նրան չեմ տեսել, չեմ ճանաչում, բայց և այնպէս ուզում եմ մօտենալ Նրան, ձուլուել Նրա հետ, միանալ որպէս հոգին և այդպէս վայելել կեանքը իր Թովչանքներով հպարտ՝ որպէս փրփուր, և աւելի խենթ՝ որպէս ժայռից ընկնող ջրվէժ։ Եւ ահա ես տեսնում եմ Նրան երկնքի աստղերի նման, մտքիս մէջ, հեռու ու մօտիկ, բայց երբէք ինձ հետ, և ուզում եմ խօսել Նրա հետ, Նրա մասին, որ բոլոր օրերի արշալոյսներից պայծառ է, և տրամադրող՝ որպէս գեղեցիկ կիրքը, այո, միայն կիրքը—Նա ամէն արտայայտութիւններից ուժեղ է...

Եւ ահա պարահանդիսում մօտենում է մէկը, մի պատանի, անմազ ու համաչափ՝ որպէս Անջէլլօեան Դաւիթ, և կրքոտ ու դժգոհ՝ որպէս դատարկութեան մէջ շրջագայող Դէմօն, ու ինձ ասում է մի ձայնով՝ որ այնպէս նման է անտառը ողողող ջրվէժին և որ այնպէս ծուատում էր սիրտս, իմ սիրտը։

Ու Նա կրկնում է.

—Դուք կարծեմ պարոն X-ն էք, այո. օրիորդ Էդիթը հարցնում է ձեր առողջութեան մասին...

Դեռ չհեռացած՝ ես հազիւ եմ կարողանում Նրան հարցնել.

—Դուք Նրա եղբա՞յրն էք։

—Ո՛չ, ես Նրա ատրուկն եմ։

—Շնորհակալութիւն Նրա ուշադրութեան համար, ես անչափ առողջ եմ, անչափ առողջ,—պատասխանում եմ Նոր, համարեա Թէ յուզուած։

Ո՞վ է Նա. տիկի՞ն Թէ՞ օրիորդ. ո՞րտեղից գիտէ ինձ, երբ ես ոչ ոքի չեմ ճանաչում. և վերջապէս ունի՞ արևիցէ գեղեցկութիւն. կամ ինչո՞վ կարողացայ գրաւել Նրան, երբ ես ինքս ինձանից զզւում եմ։ Ու մինչ մտածում էի այդ բոլորի մասին, մօտենում է Նա, այդ միևնոյն պատանին, այս անգամ Բելվէդէրեան Ապօլօնի նման, և ամենայն հանդարտութեամբ ասում.

—Դուք լաւ տպաւորութիւն էք Թողել Նրա վրայ. Նա

հաւանել է ձեր դէմքի լուռ թախիծը և խնդրում է իմանալ ձեր անունը, միմիայն անունը։

—Իմ անո՞ւնը,—կրկնեցի ես մեքենայաբար։

—Այո՛, եթէ միայն այդ դժուար չէ ձեզ։

—Ես փայտահատի որդի եմ,—ասացի նրան։

—Շատ լաւ, ես հէնց այդպէս էլ կասեմ։

—Բայց ներեցէք,—կանչեցի ես նրա ետևից,—դուք նրա ասպե՞տն էք։

—Ո՛չ, ես նրա ծառան եմ։

Ի՞նչ է նշանակում այս. աշխարհում ո՞վ կարող էր հետաքրքրուել ինձանով, եթէ ոչ գոյութիւններին իմաստ տուող այն մեծ սֆինքսը, որը յաճախ ինքն էլ սխալուել է իր գործում. երկինքն անգամ դժգոհանում է ինձանից. ո՞վ է այս հոգին, որ այդպէս ձգվում է դէպի ինձ։ Ու մինչդեռ հաշիւ պիտի տայի այդ բոլորի մասին, ահա մօտենում է նա, այն գեղեցիկ տղան, որ չգիտեմ ինչո՛ւ այս անգամ բարկացած է, և կամացուկ՝ որպէս աստղերի փոշին՝ ականջիս ասում.

—Ներեցէք, նա չի կարողանում հանգստանալ, երբ ձեզ այստեղ նստած է տեսնում. չէ՞ք ցանկանայ մօտենալ սեղանին, որից յետոյ նա կը սկսի քայլ առ քայլ հեռուից հետևել ձեզ։

—Իսկ ինչո՞ւ չի ուզում ներկայանալ, երբ ուզում է ծանօթ լինել։

—Նա ցանկանում է հեռուից վայելել սէրը և անյայտ մնալ։

—Շատ լաւ, քանի որ մօտիկութիւնը կոպտութիւն է յիշեցնում, ես կաշխատեմ բաւականութիւն տալ նրա ճաշակին։

Եւ երբ պատանին խոր գլուխ տալով հեռանում էր, ես կանչեցի նրա ետևից, միմիայն ետևից.

—Monsieur, ձեր ցանկութիւնների համար գոհացրէք ինձ գէթ մի հարցով. իսկ ո՞վ է նա, ո՞րտեղից եկած և կամ թէ ի՞նչպէս է նրա անունը, նրա անունը։

—Նրա անո՞ւնը,—ձեռքը ճակատին տանելով հարցրեց տղան,—նրա անունը Գեղեցկութիւն է...

## III

## ՄԵՆԱԿՈՒԹԻՒՆ

Վերջալոյսը հանգաւ սարի ետևում, և դաշտերի վրայ ընկաւ ստուերը քողածածկ ու սիրուն. աստղերը կանթեղների

*պէս երկնքից կախուեցին, և երեկոն իջաւ քնքշութեամբ պարուրելու տառապանքը երկրի վրայ։*

*Խոհերս արթուն են. չեմ կարողանում քնել. և ահա շալակում եմ քսան-հինգ տարուայ կեանքս, որ ինձ այնքան ծանր է, ու բարձրանում սարը, որի վրայ վերջալոյսի հրդեհը համդաւ քիչ առաջ, և այնտեղից նայում դատարկութեանը։*

*Շուրջս կեանքն է շառաչում որպէս հեղեղ, և լոյսն ու կեանքը համր ու սփոփիչ իշխում է ամեն տեղ. ու այդ մեռնող օրուայ մէջ ես ոչինչ հետաքրքրական չեմ գտնում ինձ համար. Նա սահել է որպէս յիմարութիւնը աննպատակ հոգիների և թողել իմ հոգում մի գերեզման միայն, մի խուլ ու յիմար գերեզման։*

*Եւ այդ դատարկութիւնից դրդուած՝ ես գլուխս պարկում եմ պատերին, որ խենթութիւնների այնքան կարօտ է. ու խեղդում հոգուս տենչը՝ որ այնպէս մի բանի է ձգում ինձ և որին չի կարողանում հասցնել։*

*Դատարկութի՜ւն... կա՞յ դրանից աւելի և կամ դրա պէս ազդու ու սպանիչ խօսք։*

*Եւ, որպէս աշնանային երկնքի կանթեղներ, հոգուս մէջ աստղերը հանգում են, ու խոհերս յուղարկաւորների պէս հետևում են նրանց՝ որպէս հանգչող կրակը հեռաւոր սարի վրայ. և սիրտս հեծեծում է ու լռում, համաձայնվում է ու լալիս։*

*Միտքս ճնշվում է, հանգիստ չեմ, շնագայլն է ոռնում հեռուից, և մէկ էլ՝ երբ յուղարկաւոր դագաղիս մօտենում մենակութիւնը. լո՜ւռ ու մենաւոր մի սառնութիւն է մօտենում ինձ, և ես կուչ եմ գալիս, մրսում եմ. հայրենի աղբիւրի զնգոցն եմ յիշում այդ ժամին, և մէկ էլ՝ կտրի վրայ աքաղաղի երգը, որ այնպէս զիլ էր ու հպարտ. շունը հաչում է, որին մի քար են գցում երևի մերոնք, ու հոգուս մէջ մի բան փլվում է աշնան երեկոյի պէս։*

*—Լսի՛ր. ո՞վ կայ այդտեղ, որ այդպէս զառանցում է ինձ հետ։*

*—Մենակութի՜ւնը...*

*Ա՜խ, իմ սև ու մռայլ խոհեր, դուք ծրտեղից եկաք, դուք ծրտեղից եկաք...*

## IV

## ԾԱՂԻԿՆԵՐ

*Ես ձեզ կուղարկեմ իմ հոգու այսօրուայ ծաղիկները, սրտից ու մտքից բղխած ծաղիկները, և դուք կասէք՝ որ նրանք հողից չեն ծլել, այլ հոգուց, և որ այնպէս քնքոյշ են ու դժգոյն:*

*Ես ձեզ կասեմ, որ ծաղիկները գարնանն են ծաղկել, իսկ դուք՝ թէ աշնանը, որովհետև սառած արցունքներ ունեն թերթերի վրայ, և որ ձմերային նշաններ կան վրաները, կարմիր ու սպիտակ նշաններ:*

*Ու դուք կաւելացնէք, որ նրանք հոգսերի մէջ են աճել, մաքուր ու շուշանափայլ հոգսերի, և որ նրանց հողը աշնան մէջ տաքութիւն չէ շնչել, և ոչ էլ արևի լոյսն է երբևիցէ նրանց ազդել:*

*Եւ ես կը պատասխանեմ, որ վշտի մէջ իմ սիրտն է այդ ծաղիկներն արտադրել, արցունքոտ ու դժբաղդ իմ սիրտը, և որ նա հողից դուրկ աւերակ է մի օր ապրող ծաղիկների համար, որոնք այնպէս ձգտում են լոյսին մօտենալու աշնան մէջ…*

Ա. ՋԱՆԵԱՆ

# ՄԱՐԴԿԱՅԻՆ ՅԻՇՈՂՈՒԹԻՒՆԸ

*(Հէքեաթ Շախերազադայի)*

---

*... Եւ երբ վրայ հասաւ* հարիւր-քսան-եօթերորդ *գիշերը, Շախերազադան ասաց.*

*—Ահա ինչ պատահեց, սուլթան, միակ Աստուած սուլթան, մի ժամանակ Դամասկոս քաղաքում։*

*Դամասկոսում ապրում էր մի վաճառական՝ Հասան անունով։ Նա և՛ հարուստ էր, և՛ խելօք, և՛ հաւատարիմ, որ յաճախ չէ պատահում։*

*Եւ Հասանին ճանաչում էր ամբողջ քաղաքը։*

*Նա երիտասարդ էր, բայց արդէն այրի։ Նրա ամուսինը վախճանուել էր, չթողնելով Նրան յիշատակներ՝ երեխաներ։ Եւ Նա հեշտութեամբ համաձայնուեց իր բարեկամների յորդորանքին՝ պսակուել երկրորդ անգամ։*

*Քոյրերը ընտրեցին Նրա համար մի ջահել աղջիկ, որը չքնաղ էր՝ ինչպէս լուսինը տասն-չորրորդ օրը։*

*Սարքուած էր հարսանեաց ճոխ խնճոյք, որովհետև Հասանը անչափ հարուստ էր։ Եւ երբ վրայ հասաւ ամուսնական հրճուանքի ժամը, փեսայի բարեկամուհիները հարսնացուին տարան ննջարան, մերկացրին և ծիծաղելով ու հանաքներով դրին Նրան անկողնում, քաշելով Նրա առջև մի շատ բարակ մետաքսեայ վարագոյր, որ գիտեն գործել միայն Չինաստանում։*

*Կանայք յետ դարձան ուրախ ու զուարթ և յայտնեցին, որ՝ բարի ցանկութեան դէպքում՝ բաւականութեան համար ո՛չ մի արգելք չկայ։*

*Եւ Նորապսակը գնաց ննջարան։*

*Նրան ուղեկցում էին ազգականները և բարեկամները, ինչպէս այդ լինում է միշտ հարսանիքների և թաղումների ժամանակ։ Ուղեկցում էին կանայք, որո՛նք սիրում են ամուս-*

նական գիշերները, որովհետև այդ առաջացնում է իրանց մէջ գեղեցիկ յիշողութիւններ, և աղջկերքը, որոնց մէջ այդ ծնեցնում է սքանչելի յոյսեր։

Առջևից գնում էին ուրախ երաժիշտները։

Հասանը գնում էր դանդաղ, պահելով իր արժանաւորութիւնը, որպէսզի ոչ ոք չմտածէ, թէ նա՝ մոռանալով յարգանքը դէպի քաղաքավարութիւնը՝ վազում է ընդառաջ բաւականութեանց։

Դանդաղ քայլերով մտաւ Հասանը ննջարան և, ինչպէս վայել է պատուելի մարդուն, նստեց թանկագին բարձերի վրայ անկողնու դիմաց, որպէսզի կրկին անգամ ցոյց տայ, որ ինքը բոլորովին չի շտապում, ինչպէս նոր այգի գնած մարդը չի շտապի կտրել այնտեղ եղած բոլոր ծաղիկները։

Հասանի աջ ու ձախ կողմը կանգնած տղամարդիկ և կանայք շռայլում էին նրան գուարճալի ցանկութիւններ. երիտասարդները մրցում էին սրախօսութիւններով, իսկ ծերերը և պառաւները՝ ազատ հանաքներով։

Բայց ահա դադարեց զռների ետևում նուագող երաժիշտների սրինգի հանդարտ երգը։

Հասաւ բոլորի հեռանալու րօպէն։

Հասանը բարձրացաւ թանկագին բարձերի վրայից, որպէսզի շնորհակալութիւն յայտնէ հիւրերին։

Եւ այդ ժամանակ, սուլթան...

Այդ ժամանակ ընկաւ նրա շալվարը։

Եւ բացուած խալաթով Հասանը երևաց հիւրերի առջև այնպիսի դրութեան մէջ, որ դուք՝ տղամարդիկդ մի տեսակ ամօթանքով էք ներկայանում մինչև անգամ բաղնիքպաններին, որոնց համար մերկ տղամարդու մէջ ոչինչ վիրաւորական բան չկայ, որովհետև նրանք ուրիշ տեսակները չեն տեսնում։

Կանայք սկսում են բարձր և կենդանացած խօսել իրար հետ, որպէսզի ցոյց տան, որ իրանք ոչինչ չեն նկատել։

Տղամարդիկ շփոթուած սկսում են բոլորովին անհամապատասխան հարցեր տալ միմեանց։

—Քանիսո՞վ է ծախվում հիմա բուրդը։

—Քանի՞ է պիստակի գինը։

—Անվտա՞նգ է արդեօք ճանապարհը դէպի Բաղդադ։

Ջահել հարսնացուն, որ թափանցիկ վարագոյրի միջով տեսնում էր այն ամենը, ինչ կատարվում էր լուսաւորուած սենեակում, չկարողացաւ զսպել ծիծաղը, փառկացրեց և սկսեց զրնգացնել ապարանջանները, որպէսզի խլացնէ իր քրքիջը։

Հասանի ոտները մինչև անգամ կարմրեցին։

Նա վեր քաշեց շալվարը, պինդ բռնեց ձեռքերով և դուրս վազեց ննջարանից ու տնից։

Նրան պատեց այնպիսի ամօթանք, որ տանը մտածելու ցատկեց բակում կանգնած առաջին պատահած ձիու վրայ, որը պատկանում էր հիւրերից մէկին, խփեց կրունկներով նրա կողերին և հարուածելով բռունցքներով վզին՝ դուրս թռաւ փողոց։

Հարուածների անսովոր ձին թռչում էր ինչպէս թռչուն, ինչպէս հողմ։

Այդպէս ութ օր և նոյնքան գիշերներ արշաւում էր Հասանը, հազիւ կանգ առնելով երբեմն մի քանի ժամով, որպէսզի հանգստացնէ յոգնած ձիուն։

Ամօթը մտրակում էր Հասանին, Հասանը մտրակում ձիուն։

Եւ ութ օրից յետոյ Հասանը գալիս է մի օտար, անծանօթ երկիր, մեծ քաղաք։

Հասանի մօտ փող չկար, որովհետև, դու գիտես, սուլթան, ոչ ոք հետը փող չէ վերցնում իր կնոջ ննջարանը գնալու ժամանակ։

Հասանը ծախեց իր շքեղ խալաթը և իր դժբախտութեան պատճառ՝ անիծեալ շալվարը, գնեց իր համար մի համեստ հագուստ, բայց ամուր կապիչներով։ Ծախեց յոգնած, տանջուած ձին, թանկագին թամքը և սանձը։

Եւ գոյացած փողերով գնեց շաքարով պիստակներ, շերբէթ, մեղրով ընկոյզներ ու սկսեց շրջել անծանօթ քաղաքի փողոցներով, բղաւելով՝

—Կանացի խնդութի՛ւնք, կանացի խնդութի՛ւնք։

Հասանը երիտասարդ էր և շատ գեղեցիկ, ուստի բոլոր հարեմներից կանչում էին երիտասարդ և սիրուն վաճառականին, գտնելով որ Հասանի ընկոյզները առանձնապէս համով են և շերբէթը առանձնապէս անուշաբոյր։

Արագ և լաւ գներով վաճառելով իր ապրանքը, Հասանը բանում է շուկայում մի փոքրիկ խանութ արծաթեղէնների և վաճառած արծաթէ իրերի արդիւնքով բանում է խոշոր խանութ ոսկեղէնների։

Մի տարուց յետոյ Հասանը արդէն վաճառում էր թանկագին քարեր։

Իսկ երկու տարուց յետոյ նա ամենախոշոր վաճառականն էր քաղաքում։

Մարդիկ յարգում էին նրան նրա հարստութեան համար և սիրում՝ նրա հաւատարմութեան ու խելքի համար։

Աղջկերքը ափսոսում էին, որ նա չի ցանկանում ամուսնանալ, իսկ կանայք՝ ուրախանում։

Հասանի արժանաւորութեանց լուրը հասնում է տեղական էմիրին։

Էմիրը ցանկանում է տեսնել Հասանին և՝ հիանալով նրա խելքի վրայ՝ դարձնում է Հասանին իր բարեկամը։

Երբ շուտով մեռնում է զառամեալ մեծ վեզիրը, էմիրը հասցնում է իր բարեկամին մեծ վեզիրի աստիճանին։

Եւ խելօք, հաւատարիմ Հասանը հրատարակում է շատ խելացի օրէնքներ, բախտաւորեցնելով երկիրը։ Արդարնակութիւնը Աստուծոյ օրհնութիւնն է հայցում վեզիրի համար, որովհետև Աստուծունն են փառքն ու աղօթքները։ Եւ Հասանի փառքը տարածվում է երկրիս երեսին, ինչպէս իւղը լողում ջրի երեսին։ Նրա համբաւը հասնում է հեռու երկիրներ։

Էմիրը սակաւ անգամ չէ ասել Հասանին.

—Իմ ստրկուհիների մէջ կան նոյնքան սքանչելիները, որքան և Նուրբ երաժշտութեան, երգեցողութեան ու պարերի մէջ, որոնք ընդունակ են վառարձացնել մարդուս կեանքը և որոնց ննջարանը ինձ համար նոյնպէս սուրբ է եղել, ինչպէս և իմ աղջիկների ննջարանը։ Ընտրիր նրանցից մէկին և եղիր իմ որդին։

Բայց Հասանը ամեն անգամ համբուրել է էմիրի ոտքի տակի հողը և պատասխանել.

—Տէր, ինձ հետ այդ մասին խօսիր միայն այն ժամանակ, երբ ցանկանում ես լսել իմ շրթունքներից՝ ո՛չ։

Էմիրը պատասխանում էր.

—Աստուած է միայն հրամայողը։

Եւ այնուհետև չի խօսել այդ մասին, գիտենալով յարգել լռութիւնը նոյնպէս, ինչպէս և իմաստուն խօսքերի միտքը։

Այդպէս անցնում է տասն տարի։

Եւ չի եղել մի օր այդ տասն բախտաւոր տարիների ընթացքում, որ Հասանը չյիշէր իր Դամասկոսը։

Եւ երբ լրանում է տասն տարին, մայրենի քաղաքի կարօտը այնպէս է բռնկում Հասանի հոգին, որ մի անգամ գիշերը, առանց ոչ ոքի ոչինչ ասելու, Հասանը թողնում է իր տիրոջ պալատը։ Չկամենալով, որ համարեն իրան շահասէր կամ ապերախտ, վերցնում է հետը այնքան ոսկի, որ բաւականութիւն տայ ճանապարհին, և ոտով գնում է Դամասկոս։

Բաւական գնում է նա. թուլանում է նրա մարմինը և վեր սլանում նրա հոգին։

Երբ առաւօտեան բլրի բարձրութիւնից Հասանը տեսաւ արեգակի ճառագայթների մէջ իր մայրենի քաղաքը, չկարողացաւ զսպել իրան և արցունքներ թափեց։

Կարծես մօտենալով Քաաբային, քայլում էր նա իր հայրենիքի սուրբ հողի վրայով։

Կարծես Մեքքայում՝ քայլում էր նա Դամասկոսի փողոցներով։

Եւ լսեց մի այսպիսի խօսակցութիւն։

Մի կին, նստած իր տան դրան առջև,—Թող չվիրաւորուի քո լռութիւնը, սուլթան,—միջատներ է որոնում իր աղջկայ գլխում, որը տասն տարեկան կը լինէր։

Աղջիկն ասաց.

—Ես վաղուց ցանկանում էի հարցնել քեզանից, թէ ե՞րբ եմ ծնուել և քանի՞ տարեկան եմ։

Մայրը պատասխանեց.

—Դու տասը տարեկան ես։ Դու ծնուել ես ա՛յն տարին, երբ Հասանի շալվարը վայր ընկաւ։

Լսելով այդ, Հասանը սարսափած բռնեց գլուխը։

Ինչպէս։ Նրանք այդ ժամանակուանից են վարում իրանց ժամանակագրութիւնը։

Հասանին թուաց, թէ մինարէները ճօճուեցին և տները լողացին իր աչքերի առջև։

Դուք կարող էք հասնել հզօրութեան և փառքի գագաթնակէտին։ Կորցնել բոլորը, նորից առաջին հարուստը դառնալ։ Դառնալ մեծ վեզիր խոշոր պետութեան։ Բախտաւորացնել միլիօնաւոր մարդկանց։ Լինել իմաստուն։ Եւ ձեր անուան հետ պէտք է յիշեն միայն այն, որ ձեր շալվարը մի ժամանակ վայր է ընկել։ Եւ ամեն մի անպիտան կը պատմէ այդ մասին իր քոսոտ անզգամ աղջկան։

Հասանը շուռ եկաւ և գնաց Դամասկոսից, որպէսզի էլ երբէք յետ չդառնայ։

Ահա ճշմարտութեան այն մասնիկը մարդկանց մասին, որը յայտնի է ինձ, սուլթան։ Իսկ բոլորը գիտէ միայն Աստուած։

Եւ Շախերազադան լռեց, որովհետև երկինքը կարմրեց և օրը բացուեց։

Կարդաց և պատմեց Վ. Դորօշևիչը։

Թարգմ. Կ. ՂԱԶԱՐԲԷԿԵԱՆ

# ԿԱՐԱ-ՕՂԼՈՒ *)

(Հայ ասպատակի մը կեանքէն)

---

ԳԻՐՔ Գ.

—

## I

### Երասդոս կը տենչայ

Խնայողական շարժառիթներէ մղեալ, Երասդոս վարձած էր Պոլիս երկու փոքրիկ սենեակներ, Խրիմի Յիշատակաց Եկեղեցիին դէմը գտնուող տան մը վերի յարկը։ Այսուհանդերձ, հաստատուելով հոն հեղ մը, իր երեւակայութեան թռիչքները կարծես մասամբ դանդաղիլ սկսան շրջակայ փողոցներու շուներու միշտական կռիւներէն և լալկան հաչիւններէն։ Առջեւի փողոցը մասնաւոր գունդ մը ունէր այս քօսոտ կենդանիներէն, նոյնպէս նաև ետեւինը, ու երբ իւրաքանչիւր կողմի մարտիկներ կռուիլ սկսէին իրարու դէմ, իրենց ճակատամարտին յուզումը առժամապէս մոռցնել կուտար իրեն գրականութիւնը։ Կռուին վերջացումէն յետոյ Երասդոս կրկին կը վերադառնար իր առօրեայ կեանքին «style»-ի (գրելակերպ) ուսումնասիրութեամբ զբաղելու։—Գրելակերպը, բացատրած էր գլխաւորը, սովորական դէպքեր արտակարգ ձեւով մը արտայայտելու եղանակն է։—Ուստի Երասդոս եզրակացուց, թէ խնդիրներ շատ աւելի կը դիւրացնէր՝ եթէ արտակարգ դէպքեր սովորական ձեւով արտայայտել փորձէր։ Իր սենեկին միայնութեան մէջ, օրուան ծանր աշխատանքէն վերջ, շատ ժամանակ ունէր այս թէօրին մշակելու և ժուռնալիզմը իր ամենէ կատարեալ տեսակին մէջ սովրելու։

Իր սենեակներէն մէկը կը նայէր դէմը գտնուող տան մը

---

*) «Արօր» 1910 թ. № № 6—7, 8—9—10, 11, 12. և 1911 թ. № 1, 2—3, 4.

պատուհաններուն վրայ, պատուհաններ՝ զուրկ վարագոյրներէ. ու տան բնակիչները—յոյն մարդասպաններու զուարթ ընտանիք մը—մոռցնել կուտային իրենց երկարաձգուած արդուզարդները. մինչև իր Պօլիս գալը Երասդոս տեսած չէր բնաւ այսպիսի աչքառու երևոյթներ գեղեցիկ կանացի կազմերու, մտերմոտ շարժումներ ընելով երիտասարդին, զարդասեղներ բերաննին, ու իրենց սև խոպոպիքները տարտղնած։ Մեծ աղջկան միակ մանուկը միշտ պատուհանին առջև կը լուացուէր։ Երբ իր մայրը, անփոյթ՝ օտար աչքերու, միևնոյն ձևով կը սկսէր իր անձնական արդուզարդը, Երասդոս ժամանակ կը համարէր ներս քաշուիլ, ինչ որ կը լինէր անպայման։ Այսուհանդերձ, երիտասարդին համեստութիւնը աւելի հրճուանք կազդէր իր գեղանի դրացիներուն, որոնք ծաղիկներ կը նետէին փողոցին միւս կողմէն և գրգռիչ յունարէն սիրերգներ կերգէին իրեն, մինչև կը պարտաւորուէր վար իջնել ու իր տարիքոտ տանտիկնոջ ընկերութեան մէջ ապաստան գտնել, ոմն տիկին Սմայլս։

Իր կեանքի առաջին շրջանին՝ տիկին Սմայլս հունգարացի մըն էր եղած։ Հիմա կատարեալ կօսմօպօլիտան մըն էր ու ամէն լեզու կը խօսէր, առոնց իւրաքանչիւրին լեզուաբանական յատկութեանց սահուն անհոգութեամբ մը։ Վայրագ, նիհար երես մը ունէր, կոր քիթով և օձային թուխ գանգուրներով, որոնք ուսերէն վար կը թափուէին։ Ամուսինը հեզ, կարիգոսի երևոյթով և ջրային աչքերով մէկն էր. այս ջրային աչքերը պաղտագողիօրէն կը պսպղային միշտ՝ կնոջ դաժան նայուածքներուն ազդեցութեան ներքև։ Կը հագնէր ֆրօկ մը, որ ժամանակին սև էր եղած, բայց հիմա մաշած ու փայլուն կանաչի փոխուած։ Անդրավարտիքը աղտոտ—չափազանց աղտոտ—թխագոյն էր։ Երբ առաջին անգամ Երասդոս նշմարեց զանոնք, չկրցաւ անոնց սկզբնական գոյնին վրայ գաղափար մը կազմել։

Սմայլսի տունը յանձնարարուած էր Երասդոսի՝ շնորհիւ իրենց աժան մաքրասիրութեան. սակայն յիշուած չէր իրեն թէ՝ տանտիկինը նիւթական պարագներու ներքև կը գտնուէր, որու արդիւնքը յաճախ զարմացուցիչ էր։ Ամէն անգամ որ Երասդոս դուրս ելնել ուզէր, Սմայլսներ զգուշութեամբ տանը վերի պատուհանէն կը նայէին թէ տանտիրոջ միրմիդոնները վա՞րն են՝ վարձ պահանջելու համար։ Եթէ մէկը չըլլար, կը բանային դուռը և կը ձգէին, որ դուրս երթայ։ Նոյն եղանակները կը գործադրուէին նաև Երասդոսի վերադարձին, որու տուն գալուստը միշտ կը ընկերակցէր երեք սուր սուլոցով։ Դէմի յոյն աղջիկները սովրած էին այս նախազգուշութեան նշանը ու իրենց պա-

բապոյ ժամերը երբեմն կը վատնէին՝ այդ սուլոցները օրինակելով, այնքան որ տիկին Սմայլս յիմարացնելու աստիճանին բերին։

—Օր մը հոն պիտի երթամ և իրենց մանուկը սպաննեմ,—ըսաւ Երասդոսի երեկոյ մը։—Միշտ պատուհանին առջև կը լուացուին ու վարձուորներս կը փախցնեն։ Երբ բոլոր վարձքի պարտքս վճարեմ, պիտի երթամ ու սպաննեմ այդ մանուկը։

Երասդոս հանդարտեցուց բորբոքած տիկինը ու անկեղծօրէն խնդրեց, որ այդպիսի արարք մը չգործէ։ Յիրաւի, մասամբ մը կը հրճուէր այդ փոքրիկ սև Կուպիդոնին լուացումը տեսնելով։ Սակայն տիկին Սմայլս դժնդակ ատելութիւն մը յըղացած էր տարաբաղդ մանկան հանդէպ և ուխտած՝ առաջին պատեհութեան խեղճին գործը վերջացնել։

Գիշեր մը, միս Թրէսօքի սպանութենէն երեք շաբաթ յետոյ, պր. Սմայլս ննջասենեակէն ներս սողաց ու բարկացկոտ կերպով յայտնեց Երասդոսի՝ անկողին մտնելէ առաջ դուռը կողպել։

—Ինչո՞ւ,—հարցուց Երասդոս, փոքր ինչ զարմացած։—Զափազանց նեղիչ կըլլայ, երբ դուռը փակ մնայ։

Սմայլս գնտակ գլուխը քերեց, և, թէպէտև ըսելիք մը ունենալ կերևէր, առանց յայտնելու վար գնաց, թողլով Երասդոս մեծ զարմանքի մէջ։ Արդեօք Սմայլսի ֆինանսական տագնապները ազդած էին ուղեղին։

Գիշերը այնքան տաք էր, որ Երասդոս չկրցաւ ննջել, և ժամը առաւօտեան երեքին ատեններ իր երազներէն արթնցաւ հողաթափներով սենեակէն ներս մտնողի մը գողունի ոտնաձայները լսելով։ Ամբողջ լուսինը սառնօրէն սենեակէն ներս փայլեցաւ ու իջաւ տիկին Սմայլսի ցանցառօրէն զգեստաւորուած մարմնոյն վրայ, մինչ սա՝ դանակ մը մէկ ձեռքը՝ յառաջ կու գար, միւս ձեռքը տարացած օդին մէջ՝ որպէս թէ կոկորդ մը բռնած։

Վախով սառած, Երասդոս դեռ ևս բաւական մտքի արթնութիւն ունէր՝ անշարժ մնալու, թէպէտև տիկին Սմայլսի լայնօրէն բացուած աչքերը դիւային փայլ մը կը կրէին ու իր ոսկրուտ մատները տակաւ առ տակաւ կը մերձենային։

—Պիտի սպաննեմ, այո, պիտի սպաննեմ այդ մանուկը, —մրմնջաց երկրորդ քայլ մը ևս առնելով Երասդոսի կողմը, որն ինքզինքը կորսուած համարեց։

Յանկարծ մէկը բռնեց տիկ. Սմայլսը ետևէն, պարկ մը

անցուց գլուխն և սենեակէն դուրս քաշեց վանի, մինչ այս վերջինը վայրագ կատուի մը նման կը տապլտկէր ու կիցեր կը զարնէր։ Աղմուկը հետզհետէ նուաղեցաւ, մինչև բոլորովին անլսելի եղաւ, երբ Սմայլս իր կինը խոհանոցը փակեց։

Երասդոս անկողինէն ցատկեց և դուռը կրկնակի կողպեց։ Յետոյ իր վախին վրայ ամօթ զգաց և սկսաւ խնդալ։

—Երազ մը ըլլալու էր։ Չափէն աւելի ընթրիք առի անցեալ երեկոյ... Ի՞նչ, այս ի՞նչ է...

«Այդ» տիկին Սմայլսի ձեռքէն ի՛նկած ճարտար դանակն էր, որ ածելիի մը սրութիւնը ունէր։ Երասդոս վերցուց ու մէկ կողմ դրաւ։

Յաջորդ առաւօտ, երբ Սմայլս Երասդոսի սուրճն ու ողկոյզ մը խաղողը բերաւ, աչքի գաղտագողի քթթումով մը երիտասարդին որպիսութիւնը հարցուց և յոյս յայտնեց, թէ լաւ ննջած էր գիշերը։

—Ո՛չ, Սմայլս։ Եւ դուն ալ գիտես այդ։ Գնա՛ հաշիւս բե՛ր. այսօր կը հեռանամ։ Չեմ ուզեր որ քնացած ժամանակս վիզս կտրուի։

—Երազած ըլլալու ես,—յայտարարեց Սմայլս։—Ոչ մէկը ուրիշին վիզը կտրել կուզէ։

—Բացի տիկ. Սմայլսէ։

Երասդոս սկեպտիկ եղանակով մը նախորդ գիշերուան դէպքերը պատմեց։

—Ա՛րդ, ասոնց ի՞նչ կըսես, Սմայլս։ Մի՛ ստեր։

—Երազած էք, տէր իմ։ Ընթրիքի համար կերած պանիրիդ ազդեցութիւնն ըլլալու է։ Միևնոյն բանը ինձ էլ պատահեցաւ։

—Կամ թէ պանիրին դանակը, էհ։—Երասդոս ածելիի նըման սուր դանակը դուրս քաշեց։—Անկողինիս քովը գտայ։ Ա՛րդ, Սմայլս, սուտ մի խօսիր ինծի։

—Վարը ապահով կապած եմ զինքը,—լսաւ Սմայլս, պարկեշտօրէն իր նախորդ դրութիւնը թողլով։—Երբ լուսնին առաջին քառորդը անցնի՝ կրկին կը լաւանայ։ Եթէ դու հեռանաս երկուքս ալ կը սովինք։ Մինակ քեզմով կապրինք, և այդ իսկ շատ բան մը չէ։

—Կը ցաւիմ, Սմայլս, մեծապէս կը ցաւիմ. բայց եթէ մնամ, պիտի մեռնիմ։ Լաւ էր որ կինդ հիւանդանոց տանէիր։ Միևնոյն ժամանակ, ահա վարձքիս կրկինը։ Այսօր մէկը կը ղրկեմ գոյքերուս համար։

Սմայլս պատասխանեց, թէ կընթադրէր, որ դա «Աստուծոյ

կամքն էր», ու, կեղծ զուարթութիւնով մը, դրամը առաւ։

Սակայն, երբ Երասդոս մէկը ղրկեց գոյքերը տանելու, խորամանկ տանուտէրը փակեց դուռը և մերժեց յանձնել ատոնք՝ մինչև որ ինքը չվերադառնար։ Այս ապերախտութեան վրայ զայրացած՝ Երասդոս ամերիկեան հիւպատոսարանը երթալով՝ պաշտօնեայ մը բերաւ հետը։ Այս դժուարակամ պաշտօնեային հետ միասին՝ վերադարձաւ Սմայլսի տունը և բաղխեց։

Քանի մը րոպէ լռութիւն կը տիրէր։ Ապա երկաթէ կողպանքը ճռնչեց և դուռը բացուեցաւ։ Աղօտ լոյսին մէջ Երասդոս նշմարեց տիկին Սմայլսի այլանդակ դէմքը, որ ամուսնոյն ուսին վրայէն կը նայէր։

—Այդ իմ սիրելի պր. Մարշը՞լս է,—գոչեց։—Պէտք է համբուրեմ զինքը։ Ապա թէ ոչ՝ երբէք չի ներեր ինծի։

—Լաւ է որ չմերժես, որպէս զի աւելի չգէշնայ,—ըսաւ Սմայլս։—Բնաւ չուզեր որ զիս համբուրէ։ Բաւականաչափ ուշիմ է այդ մասին։

—Դո՛ւ համբուրէ զինքը,—թելադրեց Երասդոս պաշտօնեային։

—Այդ իմ պարտականութեանս մէջ չէ,—պատասխանեց շուարած պաշտօնեան։

—Իմաց կուտամ՝ եթէ մերժես,—սպառնաց Երասդոս։—Քու պարտականութիւնդ է գոյքերս դուրս հանել։

—Համբուրէ՛ զինքը ու վերջացուր,—դժնդակօրէն պատասխանեց Սմայլս։—Ճաշակի խնդիր չկայ հոդ. եթէ չընես՝ յետոյ աւելի կը վատթարանայ։

—Օ՜, պէտք է համբուրեմ այդ սիրելի պր. Մարշըլը,—կը կրկնէր յիմարուհին։

Երասդոս դողդողալով թոյլ տուաւ, որ տիկ. Սմայլս համբուրէ զինքը, մինչ ամուսինը ձկնային անզգայութիւնով մը զանոնք կը դիտէր։

—Չեմ նախանձիր,—ըսաւ ողորմելի կատակաբանութիւնով մը, ձեռքին ետևի մասով շրթները սրբելով։—Արդ, ծրարենք գոյքերդ ու մենք ալ հոս սովինք։

—Ես ալ կօգնեմ այդ սիրելի պր. Մարշըլին գոյքերը ծրարելու,—կոչեց տիկ. Սմայլս զուարթութեամբ, միւսները վեր առաջնորդելով։

Երասդոսի սենեակը կը գտնուէր հողէ խոշոր թաղար մը, մէջը բոյսերով։ Տիկ. Սմայլս վերցուց և, առանց ժամանակ տալու միւսներուն զինքը ետ կեցնելու, մօտեցաւ պատուհանին։

—Այժմ զանք այդ անիծեալ մանուկին,—ըսաւ քաղցլօ-

րէն ու թաղարը պատուհանէն դուրս նետեց։

Երասդոս փութաց պատուհանը և տեսաւ, որ հրէայ փերեզակ մը մազապուրծ յաջողեցաւ պրծիլ, և թաղարը քարայատակին վրայ փշուր-փշուր եղաւ։ Փերեզակը ճիչով մը թողուց բեռը և անկիւնը փախաւ։ Երբ Երասդոս նորէն վար նայեցաւ, նշմարեց Ֆէնէլան՝ որ փշրուած թաղարը կը դիտէր։ Ետին կանգնած էր մէկը, որ փոքր ինչ անորք ձևով մը վեր կը նայէր։ Յենած էր ծառայի մը թևին ու իր կեցուածքը կուրութեան մը ենթադրութիւնը կընծայէր։

Քանի մը րոպէ վերջ փերեզակը ետ սողաց ու, ըստ իր ցեղային ունակութեան, սկսաւ լալ ու կոծել։ Ապրանքները ոչնչացած էին, մարմինը ցնցում մը ունեցած էր՝ որմէ անկարելի էր բուժուիլ, և հատուցում, մեծ հատուցում մը կը պահանջէր անցնող-դարձողէն այսպիսի անարգ վայրագութեան համար։ Յոյն աղջիկները, յանկարծ իրենց միջօրէի նինջէն արթննալով, աղմկարար հրէային վրայ խնդալ սկսան, մինչ փողոցի շուները յաւելուածական ապարդիւն հաջոցի խմբերգ մը կաւելցնէին այս աճող ժխորին։

Երասդոս, բոլորովին մոռնալով իր սնտուկները, վազեց վար, խուլ՝ յիմար կնոջ ուրիշ համբոյրի մը աղերսին, և բացաւ դուռը։

—Լաւ է որ ներս գաս, Ֆէն,—ըսաւ Երասդոս, առաջին խանդավառ բարի-գալուստը աւարտելով։—Այս բազմութեան ցրուումը բաւական ժամանակ կը գրաւէ։ Երբ տեսնեն, թէ փակ դռնէ զատ տեսնելիք ուրիշ բան չկայ, փերեզակին լաւ դաս մը կուտան։ Շնորհակալ եմ որ րոպէ մը առաջ չեկար։

Երասդոս օրիորդը մէկ կողմ քաշեց գաւիթը, քանի որ միւսներ վար կիջնէին սանդուղէն։

—Որքա՜ն սիրուն կերևաս, Ֆէն։ Որքա՜ն շնորհալի։ Որքա՜ն գեղեցիկ... Որպիսի՜ սիրասուն հրճուանք մըն է տեսնել քեզ կրկին։ Կարծես ամեն ինչ փոխուեցաւ։ Պահ մը առաջ ասիկա Պոլսոյ ամենէ զզուելի որջը կը համարէի, ու հիմա պալատ մըն է։

--Իրեն թագուհի ունենալով դժբախտ յիմար կին մը։ Րասդոս, ի՜նչպէս յիմարացաւ։ Քեզ ինչո՞ւ համբուրել կուզէ։

—Որովհետև յիմար է, Ֆէն։ Ա՛յդ է պատճառը։ Ուրիշ ատեն մը կը բացատրեմ քեզի։

Ֆէնէլա ծամածուռ յիմար կնոջ նայեցաւ և երախտապարտ զգաց, որ անոր՝ Երասդոսն համբուրելը տեսած չէր։ Ապա ձեռքը

երկարեց տարաբախտ էակին ու սանդուղներէն վար առաջնորդեց։

—Պէտք է պր. Քինին ներկայանաս, — ըսաւ օրիորդը սանդուղին վրայ. ու Երասդոս՝ բարկացոտ զգացումով մը կոյր բանաստեղծին ներկայութիւնը յիշեց։

Ի՞նչ կը նշանակէր այդ մարդուն Ֆէնէլայի տունէն քաշկռտումը։ Արդեօք ոչ...

Բայց երբ «մարդը» հանդարտօրէն ձեռքը երկարեց, Երասդոս զգաց, որ կոպտութիւն էր մերժել։ Ուստի առաւ զայն ու ամօթ զգաց իր վրայ՝ կոյր հակառակորդին մտերմական սեղմումէն յետոյ։

—Երկուքս ալ Hôtel Royal ենք,—ըսաւ Ֆէնէլա, մթին ընդհողեայ անկիւններէն վերադառնալով, ուր էր թողած տիկ. Սմայլսը,—ու վաղը Պոլիս թողլով՝ Սվազ կը մեկնինք. եթէ կարող ես, ընկերակցէ մեզ։

Երասդոս ժամանակ չկորսնցուց։

—Բազմութիւնը հեռացեր է։ Հրէան կը հատուցանենք իր վախին համար, ու ես ալ կերթամ գլխաւորս տեսնելու։ Բարեբախտօրէն, այժմ մարդու պակասութիւն չունինք։

—Ես հրէային գործը արդէն կարգադրած եմ,—ըսաւ Քին։ —Բաւական խօսելիք կունենաս բարեկամիդ պատմելու, օր. Ֆրօմ։ Ես իմ սենեակս կը ճաշեմ հիւրանոցը, և դուք միասին կը խօսակցիք։

—Շատ ազնիւ էք,—յայտնեց Ֆէնէլա։—Արդ, Երասդո՛ս, ինծի հետ կը ճաշես այս երեկոյ. դեռ բաւական ժամանակ ունիս նախապատրաստութեան համար։

Երասդոս, առաջնորդելով Ֆէնէլան հիւրանոց, գնաց իր գլխաւորը գտնելու և թոյլտուութիւն խնդրելու՝ երթալ և ընտանեկան քանի մը կարեւոր գործեր կարգադրելու։

Գլխաւորը սիրով յօժարեցաւ, զուարթօրէն աւելցնելով որ եթէ գործերը կրիտիկական դրութեան մէջ լինէին, անկարելի պիտի ըլլար իրեն հասուն փորձառութենէն զրկուիլ, և ընտանեկան գործերը պէտք էր ինքնին կարգադրուիլ։ Նոյնպէս խրատեց միւս օր Լաչարէֆ շոգենաւով ճամբայ ելնել Սվազի համար՝ Հալէպի և Դիարբէքիրի վրայով, որ, թէև դանդաղ, այսուհանդերձ, ապահովագոյն ճանապարհն էր։

Այդ երեկոյ Երասդոս չափազանց զբաղուած լինելով՝ գրեթէ ոչինչ կերաւ։ Ճիշտ այն պահուն, երբ կեանքը կը սկսէր փոքր ինչ միօրինակ դառնալ, ահա երևցած էր կրկին Ֆէնէլան, գրաւիչօրէն գեղեցիկ, աւելի քան՝ ինչ որ կը սպասուէր

քանի մը ամսուայ ընթացքին։ Ու աղջկան բերած լուրերը երակներուն արիւնը եռացուցին։ Սակայն, մերթ ընդ մերթ, ուշադրութիւնը շեղուելով Ջօզէֆ Բլէքի ստահակութեանց պատմութենէն՝ կը դառնար իրեն՝ Ֆէնէլայի վրայ։ Լոկ ամօթէ մղեալ, անկարող կը զգար ինքզինքը Քոլսըն Քինի ով ըլլալը հարցնելու։ Ֆէնէլայի սիրունութիւնը, դէմքին կարմիր ու ճերմակ պերճ թոյրը, մազերուն վառ գեղեցկութիւնը զինքը հոգեզմայլ հրճուանքով մը պաշարած էին, հրճուանք մը՝ որ առատօրէն կը վարձատրէր զինքը վատնած ծանրաբեռն օրերուն և միայնակ գիշերներուն փոխարէն։ Նա կը տեսնէր օրիորդը որպէս թէ մշուշի մը մէջէն, ուրկէ անոր մեղմ ու հարուստ ձայնին թափանցող շեշտերը ծանօթ երաժշտութեան մը նման կը հասնէին իրեն։ Իր իսկ ձայնը տարօրինակ երևցաւ իրեն, այնքան որ գորովալից, հնչուն ու դողդոջուն էր։ Ֆէնէլա նշմարեց այդ տարբերութիւնը. նշմարեց նոյնպէս, թէ ինչպէս անճարակ, կոշտ երիտասարդը աճած էր գեղեցիկ, գեղակազմ ու խիզախ մարդու մը։ Իրաւունք ունէ՞ր թողլու՝ որ այս երիտասարդը Կարա-Օղլուն հետապնդելու վտանգին ենթարկուէր։ Նայուածք մը Երասդոսի խանդավառ դէմքին՝ համոզեց զինքը, թէ ունէր այդ իրաւունքը։ Իր աչաց մէջ նայած պահուն՝ Ֆէնէլա զգաց, որ ուրիշ կնոջ մը նայած չէր երիտասարդը այդ եղանակով. ու անմիջապէս սա գիտակցութեան եկաւ որ՝ լաւ բան մը չէր դա։ Երասդոս, նշմարելով Ֆէնէլայի տատամսումը պատմութեան ընթացքին, այնպէս եզրակացուց թէ՝ չափազանց բուռն լինելով օրիորդին վրէժխնդրութեան տենչը Կարա-Օղլուի վրայ՝ կողմնակի խնդիրներ դուրս կը թողուր։ Սակայն երբ լսեց միս Թրէսօքի ցաւալի վախճանը, Կարա-Օղլուն պատժելու ցանկութիւնը պահ մը մոռցնել տուաւ Ֆէնէլան։

—Պէտք է բռնենք այդ սև-հոգի աւազակը,—ըսաւ։—Թերևս լաւագոյն միջոցը զինքը Թիւրքերու գործավարութ խնամքին յանձնելն է։ Այս պահուս իրերու դրութիւնը շատ վատ է Հայաստանի։ Կրնայ ուրիշ բռնկում մը ևս տեղի ունենալ ոևէ պարագայի։ Որքան որ շուտ հասնինք Սվազ, այնքան լաւ է միսիոնարներուն։ Իբրև ժուռնալիստ՝ կրնան արգիլել զիս Ալէքսանդրէտ, եթէ անմիջապէս չմեկնինք։ Լաւ չը՞լլար արդեօք, որ դու հոս մնաս և ես առանձին երթամ։

Ֆէնէլա հպարտօրէն մերժեց այդպիսի առաջարկի մը ունկնդրել։

—Կուզեմ միսիոնարաց բնակարանը տեսնել կրկին։ Եթէ

նոյն իսկ Կարա-Օղլուն չգտնենք, պէտք է Գուէկ ու Գրայըրսըն ընտանիքները տեսնեմ, ինչպէս նաև հայրդ ու մայրդ և սիրելի մանուկը։ Ինծի այնպէս կը թուի թէ՝ միակ բարեկամներն են որ ունիմ այս աշխարհի մէջ։

Երասդոս լուրջ կերպարանք մը առաւ։ Ապա խնդաց։

—Նամակ մը ստացայ միս Ուիլըընէ։ Ամերիկայի ունայնութենէն յոգնած է ու կրկին Սվազ է վերադարձած Սամսոնի վրայով։ Թերևս այն է որ՝ զինքը անհանդուրժելի գտած են Ամերիկա և ինքն ալ վերստին Կարա-Օղլուն տեսնել կը բաղձայ, որքան ալ սև-հոգի ստահակ մը լինի ան։ Եթէ Հայաստան վերադառնանք, անտեղութիւններ պիտի պատահին։ Կարժէ որ նկատի առնես այս բոլորը։

—Սվազ պիտի երթամ ես,—պատասխանեց Ֆէնէլա շըրթունքներու այն յամառ ոլորումովը՝ որ վաղուց ծանօթ էր Երասդոսի։—Սպասէ րոպէ մը։ Դեռ ես չտեսար իմ՝ քեզի բերած ընծաս։

Օրիորդը աճապարանօք թողուց սենեակը, Երասդոս հըրճուանօք արբշիռ՝ իրմէ ընծայ մը ստանալուն։

—Ահա,—ըսաւ, մեղմօրէն ներս սողալով և փոքր ծրար մը երիտասարդի թևերուն մէջ նետելով։—Դա անոր համար է՝ որ պատրաստ լիր քու կեանքդ իմինիս համար զոհել, ու պիտի օժանդակէ միս Թըրէսօքի մարդասպանը արդարութեան յանձնել։

Երասդոս հապճեպով կտրեց այն դերձանը, որով կապուած էր ծրարը։ Այդ գործողութեան միջոցին՝ գետինը ինկաւ արծաթակոթ գեղընտիր ըիվոլվէր մը։ Միասին կար նաև հրաշալի դաշոյն մը և տուփ մը փամփուշտ։

—Ո՛հ, ի՛նչ սիրուն առարկաներ։ Ի՛նչ սիրուն առարկաներ, —գոչեց, տղայական թուլութիւնով։

—Եղբայր Գրայըրսընի ատրճանակէն լա՞ւ է,—հարցուց Ֆէնէլա։—Այդ շատ օգտակար հանդիսացաւ. սակայն խորհեցայ թէ՝ լաւագոյն էր աւելի նորաձև բան մը ունենայիր։

Երասդոս ուրախութենէն անբարբառ դարձաւ։ Իրեն այնպէս թուեցաւ որ՝ Միջին Դարու մէջ կը գտնուէին ու ինք Ֆէնէլայէ սիրոյ երաշխիք մը կը ստանար։ Այդպէս ալ ըսելու վրայ էր, երբ դուռը բաղխուելով Քոլըըն Քին ներս մտաւ։

—Վաղը առաւօտ ժամը իններն կը մեկնինք,—ըսաւ Քին։ —Աշխարհացոյց մը ունիմ այստեղ, պ. Մարշըլ։ Թերևս բարեհաճիք մի քանի րոպէի համար ձեր աչքերը փոխ տալ ինծ։

Սակայն Ֆէնէլա արդէն անոր մօտն էր։

—Եկո՛ւր ու հոս նստէ,—ըսաւ ան, գորովագութօրէն, զին-

քը սեղանին առաջնորդելով։ — Մինչև անգամ պ. Մարշըլ չի կըրնար իմ տեղս գրաւել։

Երասդոս անկողին գնաց՝ այն մտածումով որ իր բոլոր ոսկեղէն երազները ջարդուփշուր եղած էին։ Ի՞նչ կրնար ընել կոյրի մը դէմ։ Ո՛չ պատուաւոր էր և ոչ ալ արի՝ այդպիսի պայքար մը։ Եթէ այդ րոպէին հանդիպէր Կարա-Օղլուի, յիշեալ քաղցրոգի մարդասպանը Ֆէնէլայի ընծային թիրախը կը հանդիսանար։ Բացի այդ, Քրին խոչընդոտ մըն էր լոկ Հայաստանի նման վայր մը։ Երասդոս կայացուց նոյնպէս համոզում մը, — չէր գիտեր թէ ի՞նչպէս կամ ինչո՞ւ, — որ բանաստեղծին դէմքը անզուսպ կերպով՝ ապագայ պատուհաս մը կը թելադրէր։

---

## Ի

### Իվան Իվանօվիչ

Միւս առաւօտ բոլորն ալ յաջողեցան թողուլ Պոլիս։ Մըտնելով շոգենաւ, Ֆէնէլայի միակ ժամանցը եղաւ ռուս ուխտաւորուհիները դիտել, որոնք ամբողջ օրը թէյ կը խմէին ու թէյի ամանները կը թողուին՝ միմիայն մաղթանքներ երգելու ժամանակին. որքան որ թէյ ըմպէին, այնքան ալ բուռն կը դառնար իրենց կրօնական ջերմեռանդութիւնը։ Այս ուխտաւորներէն շատեր հագած էին երկար կօշիկներ ու ոչխարի մորթեր, ու երբ լուացուիլ ուզէին, ծածկին վրայ գտնուող ջրո՞վ տակառի մը շուրջը կը բոլորուէին։ Կանանցմէ մին, խրելով ձեռքը տակառին մէջ, կը լեցնէր բերանը ջրով ու այդ ջուրը կաթիլ առ կաթիլ կը կաթեցնէր ընկերոջ վեր դարձուցած երեսին վրայ։ Սակայն յաճախական դէպք մը չէր սա, քանի որ քիչեր էական կը համարէին լուացուիլ։

Բարեբախտօրէն՝ Ֆէնէլայի համար ուխտաւորները, որոնք սահմանուած էին Յոպպէի, շուտով անդիի կողմը քշուեցան, և արգիլուեցաւ իրենց՝ առաջնակարգ ճամբորդաց հետ հաղորդակցութիւն ունենալ։ Ֆէնէլա փոքր ինչ դաժան կանոն մը նկատեց այդ ու այդպէս ալ խօսեցաւ նաւապետին։ Սա նրհարօրէն ժպտեցաւ ու մատակարարը կանչեց։

— Ի՞նչ պատահեցաւ վերջին ճամբորդութեան, — հարցուց։ — Բացատրէ տիկնոջ։

—Նաւապետին պանտալոնը գողցան, որ դուրսը կախուած էր խողանակուելու համար,—պատասխանեց մատակարարը, շատախօս ռուս մը, որ ամէն լեզու և միևնոյն դիւրութեամբ կը խօսէր։—Ուխտաւորուհիներէն մէկը հագած էր այդ, բայց որն ըլլալը գիտնալու միջոց չունէինք, քանի որ մատակարարուհի չկար շոգենաւին վրայ։

Ֆէնէլա Թողուց նիւթը։ Նշմարած էր մասնաւորապէս գիւղացի ուխտաւոր մը, որ միւսներէն բիչ մը լաւագոյն էր հագուած։ Այս անձը իր ժամանակին մեծ մասը երկաթին կռթնած՝ շուրջը քննելով կանցնէր, և, հակառակ սովորութեան, առանց թէյ խմելու և մաղթանք երգելու արարողութեանց մասնակցելու։ Բացատրեց մատակարարին թէ՝ սխալ մը գործած էր։ Իր ուխտագնացութեան եռանդը մարած էր. ինքնազրկումի կեանքով ապրելու մէկը չէր ինք ու կատէր մաղթանքները։ Կուզէր աշխարհը տեսնել։ Անգլիացի տիկինը ծառայի պէտք չունէ՞ր։ Եթէ այո, կրնար շատ փոքր թոշակով մը աշխատիլ. առաջնակարգ խոհարար էր։ Տիկինը կը բաղձա՞ր փորձ մը ընել։

—Ի՞նչ կը խորհիս, Րասդոս,—հարցուց Ֆէնէլա, երբ մատակարարը խնդիրքը պարզեց։

—Կուզէի նախ իր վկայականները տեսնել, եթէ ունի,—ըսաւ Երասդոս։—Յիշէ այն անզգամ խոհարարը, որ հայրդ վարձած էր Պոլիս։

—Միւս ուխտաւորներէն գերադաս կերևի, և մեծապէս պարկեշտութիւն մըն է իր կողմէն՝ խոստովանիլ թէ փոխած է միտքը,—վրայ բերաւ Ֆէնէլա։—Առաջնակարգ վկայականներ ունի Ս. Պետերբուրգէն։ Ես ինքս կարդալ չգիտեմ, սակայն մատակարարը կը յայտնէ, թէ խիստ գոհացուցիչ են։ Մեզի մէկը հարկաւոր է ձիերն ու գոյքերը հոգալու, և լաւ կը լինի, որ վարձենք մէկը՝ որ հայ չէ։ Ռուս մը՝ որ բնաւ եղած չէ Հայաստան՝ մեր ուզածն է։

—Ճիշտ է։ Անգլիերէն կը խօսի՞։

—Կարծեմ թէ՝ շատ լաւ։ Անունը Իվան Իվանօվիչ է։

—Այդ բաւականաչափ ռուս կը հնչէ,—յայտնեց Երասդոս, խնդալով։—Մինչև Սվազի համար կը վարձեմ զինքը։ Հայրս թերևս հօն դպրոցներուն մէջ գործ մը յատկացնէ իրեն։

Լսելով թէ ժամանակաւորապէս վարձուած է, մեղմ ու մելամաղձոտ Իվան Իվանօվիչ շուտով խուզեց երկար մազերն ու փոքր ինչ առատ մօրուքը։ Ի պատասխան Երասդոսի առաջարկին՝ որ վերջինը բոլորովին ածիլէ, յայտնեց թէ՝ յոյս ունէր որ օր մը, երբ սրտի փոփոխութիւն մը ունենայ, յունական ե-

կեղեցին մօտէ, հետեւաբար՝ չէր ուզեր ածիլել։ Երասդոս շոգենաւին վրայ գտնուող խուզուած մազերով քահանային նայեցաւ ու լաւագոյն բախտ մը մաղթեց իրեն։

Բարձր լեռներ, մինչեւ ջուրին եզերքը գալով, բոլորովին ծածկած էին անպաճոյճ տեսքով Ալեքսանդրէտ քաղաքը։ Ժանտային ճախճախուտ մը, որ լեռներու ստորոտէն կը տարածուէր, կազմուած էր Ամանոսի այս կողմը։ Սոյն հոսանքներուն ծով թափուիլը կարգիլուէր՝ բացուածքները միշտ առաջ գիզելով։ Երբ ուղեւորները իջան, Երասդոս, լաւ գիտնալով քաղաքը տիրող ջերմը, դրկեց Իվանը ջուրիներ գտնելու ու շնորհաւորեց ինքզինքը իր հեռատեսութեան համար՝ նկատելով ծովային ճարպիկութիւնը ջուրիները եւ երեք ձին շուտով ճարելուն։ Սակայն Թոմփսըն, Քինի ծառան, վիրաւորուած ըլլալ ջուրի նստելուն։

—Միեւնոյն բանն էր անիծեալ քուռակի մը վրայ նստիլ,—յայտնեց Երասդոսի յարգական եղանակով մը, երբ մէկնումի ժամը հասաւ։—Անգամ մը համետին վրայ ելայ՝ տեսնելու թէ ինչ կը զգամ, եւ ականջները աղօրիքի նման շարժիլ սկսան. գրեթէ պաղ զգացի։

—Այդ այս երկրի պատուաւոր անասունն է,—պատասխանեց մելամաղձոտ Իվան, հեգնական շեշտով մը։—Ատոր համար է որ հատ մը ճարեցի՝ կոյր պարոնին ծառային համար։

Այդ պարագային նկատեց որ բեռնակիր ջորիներէն մէկը կուզէր, որով փոկը թուլնալով՝ գոյքերը կռնային վրայէն թափիլ։ Անմիջական թափով մը փոկին ծայրը բռնեց, կարելի եղածին չափ սեղմեց ու ապա սնասունին ստամոքսին զօրաւոր կից մը տուաւ։ Ջորին տեղի տուաւ ու փոկը ամրացաւ՝ առանց դժուարութեան։

—Չէի գիտեր թէ Ռուսաստան ջորի ունէիք,—ըսաւ Երասդոս, ջորեպանին ճարպիկութիւնը զարմանքով նշմարելով։

—Պոլիս սովրեցայ ընել, փոքրիկ հայր,—պատասխանեց Իվան, խորին հլութիւնով մը։

—Աչքդ այդ մարդուն վրայ պահէ, Թոմփսըն,—խրատեց Երասդոս հանդարտօրէն։—Իր տեսքը շատ հաճելի չերեւնար ինծ։ Չափէն աւելի գիտէ։ Քեզ նման աշխարհէն փորձառութիւն ունեցող մէկը անմիջապէս ճանչնալու է զինքը։

Այս մեծարանքը շիկնեցուց հրճուալիր Թոմփսընը։

—Երկու ատրճանակ ունիմ գրպանս, տէր իմ, եւ երկուքն ալ լեցուն, եւ եթէ դաւ մը խաղայ՝ վրան կը պարպեմ։ Ոչ մէկ

անգլիական դատարան կը դատապարտէ զիս այդպիսի հանգամանքներու ներքեւ։

Երասդոս խնդաց։

—Չեմ կարծեր թէ անգլիական դատարանի կը սպասեն, Թոմփսըն։ Հոս խնդիրները կարգադրելու արտառոց եղանակ մը ունին։

Մօտեցաւ Ֆէնէլայի։

—Պատրաստ ես։ Եթէ այո՛ այս գիշեր կը մեկնինք, վաղը Հալէպ կը հասնինք, ապա Տիգրանակերտ, և յետոյ Սվազ։ Սվազի փոխ-կառավարիչը հօրս մէկ հին բարեկամն է և կրնայ մեզի քանի մը հոգի տալ՝ Կարա-Օղլուն հետապնդելու։ Ամերիկեան հիւպատոսարանը մասնաւոր տեղեկութիւն ստացած է որ՝ Կարա-Օղլու այժմ դէպի Հայաստան ճանապարհ ինկած է։

Գնաց Քինը գտնելու, օգնեց անոր հեծնիլ, սանձ մը անցուց բանաստեղծին ձիուն և միացաւ Ֆէնէլայի, որ երախտագէտ նայուածք մը ուղղեց իրեն։

—Կրնամ լաւ ձի հեծնիլ,—նկատեց կոյր քերթողը,—սակայն ուր երթալս չեմ կրնար տեսնել։ Զառիվեր մը կը բարձրանանք, այնպէս չէ՞։ Ձիս այնպիսի շարժումներ կը գործէ՝ որպէս թէ տան մը պատերէն բարձրանար։ Նկարագրեցէք ինձ տեսարանները։ Սա Անգլիա ժանգոտիլէն լաւագոյն է։

Երբ լեռան մը կողէն կանցնէին. կոյր բանաստեղծը բացաւ գլուխը զովանալու՝ կատարեալ հրճուանքով մը։

—Ծունկերդ սեղմ պահէ ու նախախնամութեան ապաւինէ,—թելադրեց Երասդոս։—Շղթան կը ճեղքենք ու այս գիշեր հոն կը մնանք։

Ճամբորդութիւնը այնքան ալ դիւրին գործ մը չէր՝ շնորհիւ տձող թնճուկուած կածաններուն և մաթուզի թուփերուն։ Երասդոս յառաջ անցաւ ու Քինի ձին կառաջնորդէր։ Լեռան գագաթէն նշմարելի էր Անտիոքի հարթավայրին հրաշագեղ տեսարանը. հեռուն իր ծանծաղ, կնիւնազարդ լիճը արծաթի նման կը ցոլար։ Ուղտերը երկար շարքերով կը քալէին՝ ժամը երկու մղոն ընթացքով, մինչ լեռան կէս ճանապարհին, պիղծ տեսքով անգղներու վոհմակ մը սատկած ձիու մը դիակին վրայ կը խըրախճանէր ու կը կռուէր։

—Լաւ է որ գիշերը հոս անցնենք,—ըսաւ Երասդոս։—Առաջին օրը չափազանց ճամբորդել լաւ չէ։ Ե՛կ յարմար վայր մը փնտռենք, Ֆէն։

«Յարմար վայրի» համար երկար փնտռտուքի պէտք չկար։ Քիւրդական փոքրիկ գիւղ մը կը գտնուէին—քսան ոտք երկա-

րութեամբ և ութ ոտք լայնութեամբ խրճիթներու հաւաքածոյ մը։ Պատերը, որոնց մէջէն հովը ազատօրէն կը փչէր, շինուած էին չոր եղէգէ, մօտակայ ճահիճէն կտրուած, ու Երասդոսի ընտրած խրճիթին ցեխէ յատակը վրան քալուելով կարծրացած էր։ Սենեակին մէջտեղը չոր աղբի խարոյկ մը կը վառէր—ծխնելոյզ չկար—թանձր ծուխ մը արձակելով, որու ետևէն աղօտ կերպով նշմարելի էր տանուտէր քիւրդն ու իր ընտանիքը։ Պատերէն կախուած էին քանի մը կոշտ վերմակներ. երկու կիսաթոռ, անտաշ հողէ ամաններ և թիթեղէ լապտեր մը՝ կարասիին մնացեալ մասը կը կազմէին։ Մարդուկ մը, որ ինքզինքը խրճիթին տէրը յայտարարեց, բաւ. ճամբորդներուն թէ՝ պատրաստ էր զայն իրենց յանձնել տասը փրանքով, թէև հինգ էր ակնկալածը։ Փոքրահասակ մէկն էր, սակայն քաջակազմ ու թիկնեղ, սև մազերով ու արծուային կերպարանքով։ Հագած էր սեղմ, ասեղնագործուած վերարկու մը, կարմիր շապիկ մը և տապրակի երևոյթով անդրավարտիք մը. Նոյնպէս ֆէս մը՝ եզերքը գունաւոր թաշկինակով կապած։ Ոտքերը բոբիկ էին։ Բոկոտն էր նաև կինը, փոքրամարմին էակ մը, խորամանկ թուխ աչքերով, արծուային դէմքով և յորդ սև մազերով։ Երեք ցաւոտ աչքերով մանուկներ, իւրաքանչիւրը միակ պատմուճան մը հագած, աղտոտ, խրճիթին շուրջը կը վազվռտէին, իրենց ընկեր ունենալով կատու մը, աւանակ մը և երկու կովեր։

Հինգ բոպէէն նախորդ բնակիչներուն հետքն իսկ չմնաց. յաջորդ հինգ բոպէին տեղը աւլուած և յղկուած էր, կրակը տեղափոխուած ու նոր մը պատրաստուած իսկական վառելիքով։ Զանազան տեսակ միջատասպան փոշիներ սրսկուեցան յատակին վրայ, ճանապարհորդական աթոռները բացուեցան, գետինը գորգ մը փռուեցաւ, և Իվան՝ պժգանքի շեշտով մը՝ գնուած նիհար հաւ մը կը փետրէր։

Ընթրիքը շատ հաճոյալի անցաւ, զերծ՝ շոգենաւի արգելքներէն, ու անակնկալին բովանդակ հմայքը կը կրէր։ Մէկը չէր գիտեր թէ՝ ինչ պիտի պատահի յաջորդ բոպէին. բայց սա իրենց ուրախութիւնը չխաթարեց։ Երբ վերջացաւ, Երասդոս խրճիթին մէկ անկիւնը յատկացուց Ֆէնէլայի։ Գիշեր բարի մաղթած պահուն նկատեց, որ օրիորդի միտքը անցեալով կը զբաղի, ու գնաց Քինի հետ սիգարէթ մը ծխելու։

—Լաւ չը՞լլար որ մեկնինք, քանի որ շարունակել կուզենք, —հարցուց Քին։

—Ի՞նչպէս։

Երասդոս յոգնած էր ու անյօժար նեղութեան։ Ֆէնէ-

լայի աչաց մէջ երազային քաղցրութիւն մը կար, որ զինքը կը հաշտեցնէր բոլորին հետ՝ բացի Կարա-Օղլուէ։

—Այսինքն,—վրայ բերաւ Քին,—թէև ես այսպիսի բաներու մէջ գործնական փորձառութիւն չունիմ, սակայն լաւ չը՞լլար որ բոլոր գիշերը հսկենք։

—Գիտես թէ ամբողջ խրճիթը մեր ձեռքն է։

—Այսուհանդերձ, եթէ այս Կարա-Օղլուն մինչ առաջ հասած է հոս, կրնայ այս կողմերը դեգերիլ և վրէժխնդրութիւն որոճալ։ Տարակոյս չկայ, որ մեր ուր լինելը ծանօթ է իրեն, իր Պոլսոյ սպաններուն միջոցով։ Պոլիս չի համարձակիր մնալ, վախնալով որ բրիտանական հիւպատոսը իր անգլիական գաղտնի ոստիկանաց յանձնուիլը պահանջէ։

—Կարծեմ իրաւունք ունիս։ Կը տեսնես թէ որոշ կէտ մը չունինք մեզ առաջնորդելու, բացի այն որ՝ Անգլիա մնալ անկարելի էր իրեն համար։ Բնականաբար, պիտի ուղղուի Հայաստան։ «Հայկական հարցը» կրկին առաջ գալու վրայ է, ու Կարա-Օղլու (կը կարծուի թէ շատ մը դաւադրութեանց մասնակից եղած է) պիտի սպանուի իր դաւակիցներէն, եթէ խոյս տայ իր պարտականութենէն՝ այսպիսի հրատապ բոպէի մը։

—Այդ պարագային, ուրեմն, հսկայ ոյժ մը ունենալու է իր հրամանին տակ։

—Ես ալ այդպէս կը խորհիմ։ Հայրս մեծ ազդեցութիւն ունի Թիւրք փոխ-կառավարիչին մօտ (անգամ մը զինքը Թիֆոյէ բուժած է) և մեծապէս ուրախ պիտի լինի Կարա-Օղլուն բռնելու առիթ մը գտնել։

Քին գլուխը շարժեց մտածկոտ։

—Հինգ զապթիէ ունինք հետերնիս։ Դու, միս Ֆրօմ և իմ ծառաս բոլորովին զինուած էք։ Նեղութեան պատահելու առիթ չկայ։ Կրնանք Կարա-Օղլուի ոևէ քանակութեամբ անմարդ խաժամուժը հալածել։

—Չեմ կարծեր թէ փորձելու առիթը ունենանք,—պատասխանեց Երասդոս խնդալով, որ վերստին հայրենի օջախը տեսնելու միտքը զուարթացուցած էր հոգին։ — Քու ծառադ կրնայ երկու ժամու չափ հսկել և ապա ես իմ կարգս կառնեմ։ Վաղը Հալէպ կը հասնինք և հոն ուղղակի ամերիկեան հիւպատոսին տունը կերթանք։

Քին հաւանութեան շեշտով գլուխը շարժեց։

—Ես իմ բաժինս կընեմ, եթէ կուզես։ Շատ լաւ կը լսեմ, թէև չեմ կարող տեսնել։

Երասդոս առաջնորդեց բանտապահը այն անկիւնը, ուր

անկողին մը պատրաստուած էր իրեն։

—Քնացիր ու վաղուան համար պատրաստուէ, — ըսաւ քաղցրօրէն։—Քնատութիւնով կիսամեռ ես եղած։ Դա զով օդին արդիւնքն է, շոգենաւին վրայ վանդակուելէ վերջ։

Քին մեղմօրէն բողոքեց, բայց հազիւ թէ իր անլոյս աչքերը բաց կրնար պահել։ Հինգ րոպէ վերջ խոր կը նընջէր։ Թէպէտև գիշերը պաղ էր, սակայն փոքր խարոյկը զօրաւոր ջերմութիւն մը կը սփռէր, և խրճիթը հաճելիօրէն տաք էր։

Երբ Երաստոսի կարգը եկաւ հսկելու, խոշոր վերարկու մը վրան՝ սկսաւ պաշտօնին։ Մթնոլորտը ծաղկանց բոյրերով լի էր։ Յաջորդ խրճիթը, հազիւ քսան կանգուն հեռու, զապթիէները կրակի մը շուրջը կը նստէին։ Մէկը հէքեաթ մը կը պատմէր հանդարտ, միօրինակ շեշտով, որ քնացուցիչ տպաւորութիւն մը կը գործէր լսողներուն վրայ, որոնք երբեմն գլուխնին կը շարժէին, որպէս թէ խօսողի ձայնին մեսմերական հմայքը դիւթած ըլլար զիրենք։ Երաստոս միևնոյն քնատ ազդեցութիւնը զգաց իր վրայ ու ջանաց վանել այդ՝ կէս ժամը անգամ մը պտոյտ մը գործելով։ Երբ վերջանար խրճիթին շուրջի պտոյտը, վերարկուն աւելի սեղմօրէն վրան քաշելով՝ աստղերը կը դիտէր։ Այս գործողութիւնն այն աստիճանի գրաւեց զինքը, որ լուսադէմին, երբ թեթև իրարանցում մը տեղի ունեցաւ զապթիէներուն կողմը, աննկատ անցաւ իրեն և չարթընցուց։ Պահ մը վերջ Իվան փորին վրայ պառկեցաւ ու ձիերուն և ջորիներուն կողմը սողաց։

Անգամ մը անասուններուն մօտ՝ Իվան խնամքով զատեց լաւագոյն ձին, որ Թիւրք հրամանատար զապթիէին կը պատկանէր, և համետելով զայն՝ ճանապարհէն քիչ մը հեռացուց և լեռան կողէն դէպի տափարակը տանող կողմը բերաւ։

Կրկին ետ սողալով՝ Իվան անցաւ Երաստոսի քովէն, դանակ մը ակռաներուն տակ և վարանոտ։ Քնացող երիտասարդին գլուխը կտրելու փորձութիւնը մասնաւորապէս բուռն էր. սակայն Իվան, խոհեմօրէն քննելէ վերջ, տեսաւ թէ՝ մահու պայքարը կրնար զապթիէները արթնցնել՝ իր ձիուն հասնելէ առաջ։ Շատ մը պատճառներ ունէր իրենց ձեռքը իյնալ չուզելու, ուստի խրճիթի ետևի կողմը անցաւ անշշուկ և սկսաւ ցեխին ու եղեգին մէջ ծակ մը բանալ դանակով, որոնցմով շինուած էր խրճիթը։

Նիհար լոյս մը կը պլպլար ներսը—իւղով հողէ ամանի մը մէջ ինկած պատրոյգ մը։ Ճիշդ մօտը՝ Իվան Իվանովիչ կը լսէր Ֆէնէլայի մեղմ շնչումը, որ պառկած էր երեսը Երաստոսի

կախած գորգերուն դարձուցած։ Խնամքով մը ծակին առջև կենալով, որպէսզի պաղ հովը չխռովէ աղջիկը և չարթնցնէ, ձեռքը երկարեց Իվան անկողնին մօտը գտնուող աթոռին, և թաշկինակն ու քսակը բռնեց։ Ետ քաշելով՝ անձկօրէն բացաւ, լոկ դժգոհ եղանակով գրպանը նետելու, թէև այդ լի էր ոսկիով։ Պահ մը վարանեցաւ։ Մինչ Ֆէնէլա առաւօտեան օդին պաղութիւնը զգալով՝ փոքր ինչ կը շարժէր, իր սուր աչքերը նըկատեցին բարձին ներքևէն դուրս ցցուող մանր ծրարի մը անկիւնը։

—Ա՜հ,—մրմնջեց զուարթօրէն։—Վերջապէս։ Վերջապէս .. Ադամանդները վերջապէս...

Փոքր, լեցուն ծրարը գրպանած պահուն հրճուանքի ծիծաղ մը կար երեսին վրայ։ Պահ մը վարանեցաւ, թէև, լաւ գիտնալով որ այս խնդումը կարճատև կըլլար՝ եթէ Երասդոս արթննար։ Ապա, ժպիտով մը, ծռեցաւ։—«Աղջկան ներողութիւնը խնդրելու իմ առաջին կօշտ բարևիս համար» քրթմնջեց ինքնիրեն, իր թանձր շրթները աղջկան գեղեցիկ ծոծրակին մօտեցնելով։

Երբ ձիուն վերադարձաւ, պաղ հովի հոսանք մը արթնցուց Ֆէնէլան, ու նստաւ։

—Զարհուրելի երազ մը տեսայ,—ըսաւ։—Մէկը դպաւ ինծ· չար բան մը մօտս էր։

Ապա բարձրաձայն գոչեց.

—Րասդոս, Րասդոս, կողոպտուեցայ։

Յանցաւոր զարթնումով մը ինքզինքին եկաւ Երասդոս և աչքերը տրորեց։ Գրեթէ քառասուն կանգուն հեռաւորութեան, տափարակը տանող զառիվարին վրայ՝ կանգնած էր անշարժ ձիաւոր մը։

—Ո՞վ ես,—գոչեց, ատրճանակը դուրս քաշելով։

—Ո՞վ եմ ես, խօզ միսիօնար,—պատասխանեց ընտանի ձայն մը, ձայն մը՝ որմէ աղօտ կերպով կարելի էր նշմարել խոհարար Իվանի ձայնը։—Ո՞վ եմ ես, խօզ միսիօնար։ Ես Կարա-Օղլուն եմ, և ադամանդները մօտս են։ Յաջորդ անգամ որ իրարու հանդիպինք, պիտի ուզես որ բնաւ չարթննայիր։

—Ու Երասդոսի շատ մօտէն փամփուշտ մը սլացաւ և յարափոփոխ Կարա-Օղլուն իր ասպանդակները ձիուն կողին խրելով՝ լեռն ի վար սուրաց։

Ֆէնէլա անճապարանօք գոչեց.

—Վիրաւորուեցա՞ր, Երասդոս։ Ես լաւ եմ,—և սկսաւ հագուիլ։

Քանի մը րոպէ վերջ Երասդոսի մօտն էր, բայց ոչ Քոլ-
սըն Քինի արթննալէն առաջ։

Երասդոս ինքզինքը Փոքր Ասիոյ ամենէ նուաստ անձը
հռչակեց։

—Կիցով ծեծուելու արժանի եմ, Ճէն։ Խորհի՛լ թէ այնքան
նախազգուշութիւններէ վերջ բաւականաչափ տխմար էի... Սպա-
սէ րոպէ մը...

Զապթիէներուն գնաց, որոնք քնատօրէն նստած էին, սա-
կայն Իվան հոն չէր։

—Ի՞նչ է,—հարցուց Ճէնէլա։—Կարծեմ Կարա-Օղլուի ձայ-
նը լսեցի։

—Ճիշդ է։ Այդ մարդը ամբողջ ժամանակը մեզ կը հսկէ
եղեր։ Իբրև ուխտաւոր շոգենաւ բարձրացաւ և իբրև մեր խո-
հարարը՝ դուրս ելաւ, առանց թիւրք իշխանութիւնը ամենա-
փոքր չափով կասկածի ենթարկելու։ Այժմ նորէն խուսափեցաւ
մեր ձեռքէն։ Այսուհանդերձ, ուր ըլլալը գիտենք։ Ի՞նչ բանէ
վախցար, Ճէն։

Ճէնէլա շիկնեցաւ։

—Պատին մէջ ծակ մը բացաւ և քսակս գողցաւ։

—Հապա ադամանդներու մասին ի՞նչ կը նշանակէ։ Ադա-
մանդ ունի՞ս վրադ։

Ճէնէլա հարցին անտեղիութեան վրայ ժպտեցաւ։

—Կեանքիս մէջ ադամանդ ունեցած չեմ։ Չեմ գիտեր ինչ
ըսել կուզէ։

—Ո՞րքան կար քսակիդ մէջ։

—Քսան լիրայի չափ։

—Տարօրինակ է,—ըսաւ Երասդոս։—Այդքան դժուարին
պարագաներու մէջ չի կրնար ըլլալ։

—Ուրիշ բան մըն ալ գողցաւ. մանրանկար մը,—կմկմաց
Ճէնէլա։

—Շատ կը ցաւիմ,—պատասխանեց Երասդոս, մանրանկա-
րը հօրը պատկերը կարծելով։—Օր մը ետ կառնենք իրմէ։

—Կը յուսամ թէ ո՛չ,—վրայ բերաւ Ճէնէլա, արտորանքով,
և խրճիթը իր անկիւնը վերադառնալով՝ Երասդոս առաւել քան
երբէք ապշահար թողած։

Ի՞նչ ըսել կուզէր Կարա-Օղլու ադամանդներով, և ինչու
Ճէնէլա շիկնեցաւ՝ հօրը մանրանկարը յիշած պահուն։

Վերջին հարցումը կը լուսաբանուէր Երասդոսի շատ գո-
հացուցիչ կերպով՝ եթէ տեսնէր Կարա-Օղլուի քանի մը մղոն
հեռուն գողցած ձիէն վար իջնելը, խոշոր քարի մը վրայ նըս-

ափին ու անհամբերօրէն Ֆէնէլայէ առած ծրարին բանալը։ Ծրարը փոքր, ձուաձև տուփ մըն էր, որ կը բովանդակէր Երասգոսի հոյակապօրէն նկարուած պատկերը,—Ֆէնէլայի միակ զեղխանքը՝ միս Թրէսօքի հարստութեան տէրը լինելէն ի վեր։ Ու Կարա-Օղլուի այդ պահու դէմքը տեսնել այնքան ալ հաճելի չէր, երբ մասնայատուկ ու մանրակրկիտ անէծքներով՝ դրամանրանկարը ժայռի մը վրայ, մեծ քար մը վերցուց և զայն փոշիի վերածեց, միևնոյն ժամանակ փափագելով որ այդ գ ուխը ըլլար տիրոջ իսկականը։ Ապա, հայելի մը և կեղծ մազեր դուրս հանելով՝ ծպտուեցաւ իբրև զապթիէ և, ծիծաղկոտ յուշաբերումով մը՝ որ իր Օքսֆորդի ամատեօր թատերականութիւնը զուր անցած չէր, շարունակեց իր օձապտոյտ ճա՛ ապարհը։

Զ. Բ. ԲԸՐՉԻՆ

Թարգմ. անգլ. Մինաս Ցոլակ

(Կը շարունակուի)

# ԽՈՍՏՈՎԱՆՈՒԹԻՒՆԸ*)

Լ. Ն. Տօլստօյի

X

Ես այդ հասկանում էի, բայց դա ինձ չէր սփոփում։

Ես պատրաստ էի այժմ ընդունելու ամեն մի դաւանանք, միայն թէ նա չպահանջէր ինձանից բանականութեան շեշտակի ժխտումը, որը մի կեղծիք կը լինէր։ Եւ ես ուսումնասիրեցի և՛ բուդդայականութիւնը, և՛ մահմեդականութիւնը գրքերի միջոցով, իսկ ամենից շատ՝ քրիստոնէութիւնը թէ՛ գրքերով և թէ՛ կենդանի՝ ինձ շրջապատող մարդկանց նայելով։

Բնականօրէն ես դիմեցի ամենից առաջ իմ շրջանի հաւատացեալ մարդկանց, գիտնականներին, ուղղափառ աստուածաբաններին, աբեղայ-ճգնաւորներին, նորագոյն տեսակի աստուածաբաններին և նոյն իսկ այսպէս կոչուած նոր քրիստոնեաներին, որոնք դաւանում են փրկութիւնը՝ քաւութեան միջոցով։ Եւ կառչում էի ես այդ հաւատացեալներից, հարց ու փորձ անում նրանց այն մասին, թէ ինչպէս են իրանք հաւատում և ինչումն են տեսնում կեանքի իմաստը։

Չնայելով որ ես անում էի ամեն տեսակ զիջողութիւններ, խորշում զանազան վէճերից, այնուամենայնիւ անկարող եղայ ընդունելու այդ մարդկանց դաւանանքը. տեսայ, որ այն, ինչ որ նրանք դաւանանքի տեղ էին դրել, բացատրութիւն չէր, այլ կեանքի իմաստի մթնացումը, մանաւանդ որ նրանք պնդում էին իրանց դաւանանքի վրայ ոչ այն նպատակով, որ նա պատասխանած լինէր կեանքի այն հարցի վերաբերեալ, որը հասցրել է ինձ դաւանանքի գաղափարին, այլ ինչ-որ ուրիշ, ինձ համար միանգամայն օտար նպատակների համար։

*) «Արօր» № № 1 2—3, և 4.

Յիշում եմ իմ նախկին յուսահատութեան սարսափի տանջող զգացումը այն յոյսերից յետոյ, որ ես կրում էի իմ մէջ շատ և շատ անգամ՝ այդ մարդկանց հետ ունեցած յարաբերութիւններիս ժամանակ։

Որքան շատ, որքան մանրամասն կերպով էին մեկնում նրանք իմ առջև իրանց դաւանաբանութիւնը, այնքան պարզօրէն տեսնում էի ես նրանց մոլորութիւնը և իմ յոյսերի խորտակումը՝ գտնելու նրանց դաւանանքի մէջ կեանքի իմաստի բացատրութիւնը։

Ոչ թէ այն էր ինձ յետ մղողը, որ իրանց դաւանաբանութեան մեկնաբանութեան մէջ նրանք խառնում էին նաև իմ սրտին միշտ մօտ եղած քրիստոնէական ճշմարտութիւններ և այլ բազմաթիւ անպէտք ու անիմաստ բաներ, ո՛չ. այլ ինձ յետ մղեց այն, որ այդ մարդկանց կեանքը նոյնն էր, ինչ որ իմը, այն տարբերութեամբ սակայն, որ նա չէր համապատասխանում այն սկզբունքներին, որ մեկնաբանում էին նրանք իրանց դաւանաբանութեան մէջ։ Եւ պարզապէս զգում էի, որ նրանք խաբում են իրանք իրանց և որ նրանք էլ, ինչպէս և ես, չունեն կեանքի այլ իմաստ, բացի այն, որ ապրենք՝ քանի կարելի է ապրել, վերցնել այն, ինչ կարող է ձեռք բերուել։ Ես այդ տեսնում էի այն պատճառով, որ եթէ նրանք ունենային այն իմաստը, որով ոչնչանում է զրկանքների, տառապանքների և մահուան սարսափը, այն դէպքում նրանք երկիւղ չէին ունենայ վերջիններից։ Դրանք՝ մեր շրջանի այդ հաւատացեալները, ճիշտ ինձ պէս, ապրում էին լիութեան և առատութեան մէջ, ճգնում էին շատացնել կամ պահպանել այդ առատութիւնը, վախենում էին զրկանքներից, տառապանքներից, մահից՝ միևնոյն կերպ, ինչպէս և ես ու բոլոր ոչ-հաւատացեալները. ապրում էին, բաւարարութիւն տալով ցանկութիւններին, ապրում էին նոյնպէս վատ՝ գուցէ և աւելի վատ, քան ոչ-հաւատացեալները։

Ո՛չ մի դատողութիւն չէր կարող ինձ համոզել նրանց դաւանութեան ճշմարտութեան մէջ։ Միմիայն այնպիսի գործողութիւններ, որոնք ինձ ցոյց տալ կարողանային, որ նրանց դաւանանքի մէջ կեանքի մի այնպիսի իմաստ կայ, որով ինձ համար սարսափելի աղքատութիւնը, հիւանդութիւնը, մա՛հը սարսափելի չեն նրանց, միմիայն դրանք կարող էին ինձ համոզել։ Իսկ այդպիսի գործողութիւններ ես չտեսայ մեր շրջանի բազմազան հաւատացեալների մէջ։ Ընդհակառակը, ես տեսնում էի այդպիսի գործողութիւններ մեր շրջանի մարդկանց մէջ,

*հէնց մոլեռանդ ոչ-հաւատացեալների մէջ, բայց երբէք՝ մեր շրջանի այսպէս կոչուած հաւատացեալների մէջ։*

*Եւ ես հասկացայ, որ այդ մարդկանց դաւանանքը այն դաւանանքը չէ, որ ես փնտռում էի, որ նրանց դաւանանքը դաւանանք չէ, այլ միմիայն կեանքի էպիկուրէական մխիթարութիւններից մէկը։ Ես հասկացայ, որ այդ դաւանանքը պէտքական է գուցէ և ոչ մխիթարութիւնների համար, այլ մահուան մահիճը ընկած՝ զղջացող Սողոմոնին մի փոքր սփոփելու համար, սակայն նա չէ կարող պիտանի լինել մարդկութեան բոլոր մեծամասնութեան համար, որը կոչուած է ոչ թէ զըւարճանալու համար՝ ուրիշների աշխատանքներից օգտուելով, այլ՝ կեանք ստեղծագործելու։*

*Որպէս զի ամբողջ մարդկութիւնը կարողանայ ապրել, որպէս զի շարունակէ կեանքը, օժտելով նրան իմաստով, նրանց մօտ՝ այդ միլիարդների՝ պէտք է լինի դաւանանքի մի այլ, մի իսկական գիտութիւն։ Յիրաւի՝ այն, որ մենք Սողոմոնի և Շոպէնհաուէրի հետ մեզ չսպանեցինք, այն չէր ինձ համոզողը դաւանանքի գոյութեան մէջ, այլ այն, որ այդ միլիարդները ապրել են ու ապրում են և մեզ էլ Սողոմոնների հետ՝ իրանց կեանքի ալիքների վրայ տարել։*

*Եւ ես սկսեցի մերձենալ աղքատ և հասարակ հաւատացեալներին, ոչ-գիտնականներին, ուխտաւորներին, աբեղաներին, աղանդաւորներին, գիւղացիներին։ Այդ ժողովրդի մարդկանց դաւանաբանութիւնը նոյնպէս քրիստոնէական էր, ինչպէս և մեր շրջանի կեղծ-հաւատացեալների դաւանաբանութիւնը։ Քրիստոնէական ճշմարտութիւններին այստեղ էլ խառնուել էին բազմաթիւ նախապաշարմունքներ, սակայն այն տարբերութեամբ, որ մեր շրջանի հաւատացեալների նախապաշարմունքները բոլորովին հարկաւոր չէին իրանց, չէին կապվում իրանց կեանքի հետ, այլ կազմում էին մի տեսակ էպիկուրէական զուարճութիւն. իսկ աշխատաւոր ժողովրդի հաւատացեալների նախապաշարմունքները այն աստիճան էին կապուած իրանց կեանքի հետ, որ անհնարին էր երևակայել նրանց՝ առանց այդ նախապաշարմունքների. դրանք այդ կեանքի անհրաժեշտ պայմանն էին կազմում։ Մեր շրջանի հաւատացեալների ամբողջ կեանքը հակասական է նրանց դաւանանքի նկատմամբ, իսկ աշխատաւոր հաւատացեալների ամբողջ կեանքը ապացոյց էր կեանքի այն իմաստի, որը տալիս էր դաւանանքի գիտութիւնը։ Եւ ես սկսեցի դիտել այդ մարդկանց կեանքն ու դաւանանքը. և որքան շատ էի դիտում, այնքան աւելի համոզվում, որ նրանք ու-*

նեն իսկական դաւանանք, որ դաւանանքը նրանց համար անհրաժեշտութիւն է, որը և տալիս է նրանց կեանքին իմաստ ու ապրելու հնարաւորութիւն։ Հակառակ այն բանին, ինչ տեսնում էի ես մեր շրջանում, որտեղ առանց դաւանանքի կեանքը հնարաւոր է և որտեղ հազարից մէկն է իրան հաւատացեալ համարում, առաջինների շրջանում հազարից հազիւ մէկը լինի ոչ-հաւատացեալ։ Հակառակ այն բանին, որ ես տեսնում էի մեր շրջանում, որտեղ կեանքը անց է կենում պարապութեան և զուարճութիւնների մէջ և կեանքից դժգոհ մնալով, այստեղ, ընդհակառակը, տեսնում էի, որ այս մարդկանց ամբողջ կեանքը անց է կենում ծանր աշխատանքի մէջ, և որ նրանք կեանքից բաւական են։ Հակառակ այն բանին, որ մեր շրջանի մարդիկ ընդդիմանում ու զայրանում էին ճակատագրի վրայ զրկանքների և տառապանքների համար, այս մարդիկ ընդունում էին հիւանդութիւններն ու դառնութիւնները առանց որևէ թիւրիմացութեան, ընդդիմադրութեան, անդորր ու հաստատ համոզումով, որ այդ ամենը՝ բարիք է։ Հակառակ այն բանին, որ մենք որ չափով որ խելացի լինենք, այն չափով էլ պակաս ըմբռնում ենք կեանքի իմաստը և մի ինչ-որ նենգաւոր ծաղր ենք տեսնում այն բանում, որ մենք տառապում ու մեռնում ենք, ընդհակառակը՝ այս մարդիկ ապրում են, տառապում և մօտենում մահուան, տառապում անդորրութեամբ, աւելի յաճախ՝ ուրախութեամբ։ Հակառակ այն բանի, որ անդորր մահը, մահ առանց սարսափի և յուսահատութեան, ամենասակաւ բացառութիւնն է մեր շըրջանի մէջ, — մինչդեռ անհանգիստ, անհնազանդ և մահը՝ տխուր ժողովրդի մէջ բացառիկ երևոյթ է։ Եւ այդօրինակ մարդկանց թիւը, — որոնք զրկուած են այն ամենից, ինչ որ մեզ համար՝ Սողոմոնի հետ միասին՝ կազմում է կեանքի միակ երանութիւնը, որի մէջ նրանք տեսնում են մեծագոյն բախտ, — անթիւ անհամար է։ Ես աւելի հեռուն դիտեցի իմ շուրջը։ Ես թափանցեցի անցեալում և այժմ ապրող մարդկանց խոշոր զանգուածների կեանքի մէջ։ Եւ տեսայ այնպիսիներին, որոնք ըմբռնել էին կեանքի իմաստը, գիտէին ապրել և մեռնել, և ոչ միայն երկուսին, երեքին, տասին, այլ հարիւրներով, հազարներով, միլիոններով։ Եւ նրանք բոլորը, իրանց բարքերով, խելքով, կրթութեամբ, կացութեամբ անվերջ տարբերուող, բոլորը միակերպ՝ միանգամայն հակառակ իմ անգիտութեան՝ ըմբռնել էին կեանքի և մահուան իմաստը, աշխատում էին հանգիստ, ամեն տեսակ զրկանքներ ու տառապանքներ

կրելով ապրում ու մեռնում, որի մէջ տեսնում էին ոչ թէ ունայնութիւն, այլ՝ բարութիւն։

Եւ ես սիրեցի այդ մարդկանց։ Որքան շատ էի թափանցում նրանց կեանքի մէջ, կենդանի մարդկանց ու ապրած-մեռած մարդկանց կեանքի մէջ, որոնց մասին ես կարդացել ու լսել եմ, այնքան շատ էի սիրում նրանց և այնքան էլ ինձ համար թեթևանում էր կեանքը։ Այդպէս ապրեցի ես երկու տարի, երբ իմ մէջ կատարուեց մի յեղաշրջում, որը վաղուց նախապատրաստվում էր իմ ներսը և որի սաղմերը միշտ եղել են մէջս։ Իմ մէջ տեղի ունեցաւ այն, որ մեր շրջանի կեանքը հարուստների, գիտնականների—ոչ միայն դարձաւ ինձ համար զզուելի, այլ կորցրեց ամեն մի իմաստ։ Մեր բոլոր գործողութիւնները, դատողութիւնները, գիտութիւնները, արուեստները՝ իմ աչքում ստացան նոր նշանակութիւն։ Ես հասկացայ, որ այդ բոլորը՝ միմոսութիւն է, որ դրա մէջ կեանքի իմաստ որոնելը անհնարին բան է։ Իսկ աշխատաւոր ժողովրդի, համայն մարդկութեան, կեանքի ստեղծագործողի ամբողջ կեանքը ներկայացաւ իմ առջև իր իսկական նշանակութեամբ։ Ես հասկացայ, որ դա՝ ինքը կեանքն է, և որ կեանքի այդ իմաստը՝ ճշմարտութիւն է. և ես ընդունեցի այն։

---

## XI

Եւ յիշեցի այն, թէ ինչպէս միևնոյն հաւատալիքները ինձ մի կողմ էին վանում և անիմաստ բաներ թւում՝ երբ այդպիսիք դաւանում էին այդ հաւատալիքներին հակառակ կեանք վարող մարդիկ, և թէ ինչպէս միևնոյն հաւատալիքները գրաւեցին ինձ և թւացին խելամիտ բաներ՝ երբ ես տեսնում էի, որ կան մարդիկ, որոնք ապրում են դրանցով. այն ժամանակ ինձ համար հասկանալի դարձաւ, թէ ինչու մի ժամանակ ես դէն էի դցել այդ հաւատալիքները և թէ ինչու համարել դրանց անմտութիւններ, իսկ այժմ ընդունեցի նրանց և համարեցի իմաստալից։ Ես հասկացայ, որ մոլորուած եմ, և այն էլ ինչպէ՜ս մոլորուած։ Ես մոլորուած եմ ոչ այնքան նրանից, որ անկանոն եմ մտածել, այլ նրանից, որ ապրել եմ վատ կեանքով։ Ես հասկացայ, որ ճշմարտութիւնը ինձնից քողարկել էր ոչ այնքան իմ մտքերի մոլորութիւնը, որքան իմ կեանքը՝ էպիկուրեականութեան ցանկութիւններիս յագուրդ տալու այն բացառիկ

պայմաններում, որոնց մէջ անցկացրել եմ ես իմ կեանքը։ Ես հասկացայ, որ իմ հարցը, թէ ինչ է իմ կեանքը, և պատասխանը, թէ՝ չարիք, միանգամայն ուղիղ էր։ Ուղիղ չէր միայն այն, որ յատկապէս ինձ վերաբերող պատասխանը՝ ես վերագրեցի ամբողջ կեանքին. ես ինձ հարցրի, թէ ինչ բան է իմ կեանքը, և ստացայ պատասխան՝ չարիք է և անմտութիւն։ Եւ յիրաւի, իմ կեանքը—կեանք՝ ցանկութիւնների փայփայման—անմտութիւն ու չարիք է, ուստի և պատասխանը՝ «կեանքը չարիք է ու անմտութիւն՝» վերաբերում էր միմիայնի մ կեանքին և ոչ թէ ընդհանուր մարդկայինին։ Ես ըմբռնեցի այն ճշմարտութիւնը, որը յետոյ գտայ նաև Աւետարանի մէջ, որ մարդիկ աւելի սիրել են խաւարը, քան լոյսը, որովհետև նրանց գործերը եղել են չար։ Որովհետև իւրաքանչիւր ոք՝ վատ գործեր կատարող՝ ատում է լոյսը, չէ գնում դէպի լոյսը, որպէս զի չը մերկացնէ իր գործերը։ Ես ըմբռնեցի, որ կեանքի իմաստը հասկանալու համար անհրաժեշտ է նախ՝ որ կեանքը չլինի չարիք ու անմտութիւն, որից յետոյ կարևորէ բանականութիւն՝ այդ կեանքը հասկանալու համար։ Ես ըմբռնեցի, թէ ինչու այդքան ժամանակ պտտուել եմ մի այդպիսի ակնյայտնի ճշմարտութեան շուրջը, և որ եթէ կարևոր է մարդկութեան կեանքի մասին մտածել ու խօսել, ապա կարևոր է նաև մտածել ու խօսել համայն մարդկութեան կեանքի մասին և ոչ թէ մի քանի պորտաբոյծների կեանքի։ Այդ ճշմարտութիւնը միշտ եղել է ճշմարտութիւն, ինչպէս երկու անգամ երկուսը չորս է, սակայն ես չեմ ընդունել այն, որովհետև՝ ընդունելով երկու անգամ երկու չորս լինելը՝ ես պէտք է ընդունէի իմ վատ լինելը։ Բայց ինքս ինձ լաւ համարելը ինձ համար աւելի կարևոր և անհրաժեշտ էր, քան երկու անգամ երկու չորս լինելը։ Ես սիրեցի լաւ մարդկանց, ատեցի ինձ, որով և ընդունեցի ճշմարտութիւնը։ Այժմ ինձ համար ամէն բան պարզուեց։

Ի՞նչ կը լինէր, եթէ իր կեանքը տանջանքների և գլուխներ կտրելու մէջ անցկացնող դահիճը, կամ անյոյս արբեցողը, կամ խելագարը, որ իր ամբողջ կեանքը անց է կացրել մութ սենեակում, աղտոտէր այդ սենեակը, երևակայելով թէ նա կոչնչանայ՝ եթէ այդտեղից դուրս գալու լինի. ի՞նչ կը լինէր, եթէ նա հարցնէր՝ ի՞նչ բան է կեանքը։ Ակնյայտնի է, որ նա այդ հարցին չէր կարող այլ պատասխան ստանալ, քան որ՝ կեանքը մեծագոյն չարիք է. և խելագարի այդ պատասխանը միանգամայն ուղիղ կը լինէր, սակայն բացառապէս իրան համար։ Իսկ եթէ ես էլ նոյնպիսի մի խելագար եմ։ Իսկ եթէ

մենք բոլորս, հարուստ ու պարապ մարդիկս, միևնոյն խելագարներն ենք։ Այո, ես ըմբռնեցի, որ մենք յիրաւի այդպիսի խելագարներ ենք։ Ես մանաւանդ՝ անպայման այդպիսի խելագարներից եմ։

Իսկապէս, Թռչունը գոյութիւն ունի այնպէս, որ նա պէտք է թռչի, սնունդ ժողովի, բոյն շինի. և երբ ես տեսնում եմ թռչունի այդ գործը՝ ես ուրախանում եմ նրա ուրախութեամբ։ Այծը, նապաստակը, գայլը գոյութիւն ունեն այնպէս, որ նրանք պէտք է կերակրուեն, բազմանան, կերակրեն իրանց ընտանիքը. և երբ նրանք անում են այդ՝ ես հաստատապէս գիտակցում եմ, որ նրանք երջանիկ են և նրանց կեանքը խելացի է։ Սակայն ինչ պէտք է անի մարդը։ Նա միևնոյն կերպ պէտք է ձեռք բերէ կեանքը, ինչպէս և կենդանիները, այն տարբերութեամբ սակայն, որ նա կոչնչանայ, եթէ միայնակ գործէ. նա պէտք է ձգտի ձեռք բերել ոչ թէ միայնակ և այն էլ իր համար, այլ բոլորի։ Եւ երբ նա անում է այդ. ես հաստատապէս գիտակցում եմ, որ նա երջանիկ է և նրա կեանքը բանական։ Բայց ինչ էի անում ես իմ ամբողջ երեսնամեայ գիտակցական կեանքում։ Ես ոչ միայն կեանք չէի հայթայթում բոլորի համար, այլ նոյն իսկ ինձ համար այդ չէի անում։ Ես ապրում էի որպէս պորտաբոյծ. և երբ հարցրի ինքս ինձ, թէ ինչու եմ ապրում, ստացայ պատասխան՝ ոչ մի բանի համար։ Եթէ մարդկային կեանքի իմաստը կեանքի հայթայթման մէջ է, ապա ինչպէս ամբողջ երեսուն տարի չզբաղուելով կեանքի հայթայթմամբ, այլ զբաղուելով նրա կործանմամբ իմ և ուրիշների մէջ, ես կարող էի ստանալ մի այլ պատասխան, քան այն, որ իմ կեանքը անմտութիւն է ու չարիք... Նա յիրաւի անմտութիւն էր և չարիք։

Տիեզերքի կեանքը կատարվում է ինչ-որ մէկի կամքով. ինչ-որ մէկը ամբողջ տիեզերքի և մեր կեանքերով իր ինչ-որ գործն է կատարում։ Որպէս զի յոյս ունենաս՝ հասկանալու համար այդ կամքի իմաստը, ամենից առաջ անհրաժեշտ է կատարել այդ կամքը, անել այն, ինչ որ մեզանից պահանջում են։ Իսկ եթէ ես չեմ անելու այն, ինչ որ ինձանից ուզում են, ապա ես երբէք չեմ հասկանայ և այն, ինչ որ ինձանից են ուզում և մանաւանդ՝ ինչ որ ուզում են ամենքից և ամբողջ տիեզերքից։

Եթէ մերկ, քաղցած տնանկին վերցնէինք ուղեկտուրից, բերէինք գեղեցիկ հիմնարկութեան մէջ, կերակրէինք, խմեցնէինք և ապա ստիպէինք մի որևէ փայտ վար և վեր շարժել, ակնյայտնի է, որ նախ քան քննելը՝ թէ ինչու են

իրան վերցրել, ինչու շարժել փայտը, խելացի՞ կերպով է արդեօք կառուցուել այս հիմնարկութիւնը,—տնանկին կարեւոր էր ամենից առաջ փայտը շարժել։ Եթէ նա կը շարժի փայտը, ապա նա կը հասկանայ, որ այդ փայտը շարժում է ջրհան գործիքը, որ գործիքը հանում է ջուր, որ ջուրը գնում է ածուներով, և այն ժամանակ նրան դուրս կը բերեն ծածկուած ջրհորից և կը յանձնեն մի այլ գործ․ նա կը սկսի հաւաքել պտուղներ, միանալով իր տիրոջ ցնծութեանը, որով անցնելով ստորից դէպի բարձր գործը, հետզհետէ հասկանալով ամբողջ հիմնարկութեան կառուցուածքը և մասնակցելով նրան՝ երբէք չի էլ մտածի հարց տալու, թէ ինչու է ինքը այստեղ, և մանաւանդ ոչ մի պարագայում չի պախարակի տիրոջը։

Հէնց նոյն կերպ չեն պախարակում տիրոջը նրանք, որոնք կատարում են նրա կամքը՝ հասարակ, բանուոր, ոչ-գիտնական մարդիկ—նրանք, որոնց մենք անասուն էինք համարում․ բայց ահա մենք՝ իմաստուններս՝ ուտելով ուտում ենք ամբողջ տիրականը և չենք ուզում գործել այն, ինչ որ մեզանից պահանջում է տէրը․ ընդհակառակը, գործելու փոխարէն մենք կազմել ենք մի շրջան և դատողութիւններ ենք անում․ «Ինչու համար շարժել փայտը։ Չէ՞ որ դա յիմար բան է»։ Եւ վերջապէս խելքի եկանք։ Հասանք այն մտքին, որ տէրը յիմար է, կամ նա չկայ, իսկ մենք խելացի մարդիկ ենք, զգում ենք միայն, որ ոչ մի բանի պիտանի չենք, և հարկաւոր է, որ որևէ կերպ մենք մեզանից ազատուենք։

———

## XII

Բանական գիտութեան մէջ սխալման գիտակցութիւնը օգնեց ինձ ազատուելու պարապ խելամտութեան գայթակղութիւնից։ Այն համոզմունքը, որ ճշմարտութեան գիտութիւնը հնարաւոր է գտնել միմիայն կեանքի միջոցով, ստիպեց ինձ կասկածելու իմ կեանքի կանոնաւորութեան վերաբերութեամբ․ սակայն փրկեց ինձ միմիայն այն հանգամանքը, որ ես գտայ հնար անջատուելու իմ բացառիկ դրութիւնից և տեսնելու հասարակ բանուոր ժողովրդի իսկական կեանքը։ Ես հասկացայ, որ եթէ ես ուզում եմ ըմբռնել կեանքն ու նրա իմաստը՝ ինձ հարկաւոր է ապրել ոչ թէ պորտաբոյծի կեանքով, այլ իսկական կեանքով.

ապա ընդունելով այն իմաստը, որը յատկացնում է Նրան իսկական մարդկութիւնը, և ձուլուելով այդ կեանքի հետ՝ վերաստուգել այն։

Հէնց միևնոյն ժամանակ ինձ հետ պատահեց հետևեալը։ Այդ ամբողջ տարում, երբ գրեթէ իւրաքանչիւր րոպէ ես հարց էի տալիս ինքս ինձ՝ վերջ տա՞մ արդեօք կեանքիս պարանով կամ փամփուշտով,—այդ ամբողջ ժամանակ, մտքերի և դիտողութիւնների այն ընթացքների հետ միաժամանակ, որոնց մասին ես ասում էի, իմ սիրտը տառապում էր տանջող զգացումով։ Այդ զգացումը ես չեմ կարող այլ կերպ անուանել, քան Աստուծու որոնումն։

Ես ասում եմ, որ Աստուծու այդ որոնումը դատողութիւն չէր, այլ զգացում, որովհետև այդ որոնումը բղխում էր ոչ թէ իմ մտքերի ընթացքից,—դա նոյնիսկ ուղղակի հակադիր էր նրանց,— այլ նա բղխում էր սրտից։ Դա որբութեան, մենակութեան սարսափի զգացումն էր՝ բոլոր այդ օտարների մէջ, մի ինչ-որ մէկից ունեցած՝ օգնութեան ակնկալութիւնները։

Զնայելով որ ես միանգամայն համոզուած էի Աստուծու գոյութիւնը ապացուցանելու հնար չլինելու մէջ (որովհետև Կանտը ինձ ապացուցել էր, և ես լիովին ըմբռնել էի նրան, որ այդ բանը ապացուցել չէ կարելի), ես այնուամենայնիւ որոնում էի Աստուծուն. յուսով էի, որ կը գտնեմ Նրան, և ըստ հին սովորութեան դիմում էի աղերսանքով Նրան, Որին ես որոնում էի, բայց չէի գտնում։ Երբեմն մտքումս վերաստուգում էի Կանտի և Շոպէնհաուէրի առարկութիւնները Աստուծու գոյութեան ապացոյցի անհնարին լինելու նկատմամբ, երբեմն սկսում էի վերաստուգել այդ առարկութիւնները և հերքել նրանց։ Պատճառը, ասում էի ինքս ինձ, մտածողութեան միևնոյն կատեգորիան չէ, ինչպէս տարածութիւնն ու ժամանակը։ Եթէ ես կամ, ապա ուրեմն կայ և դրա պատճառը, պատճառների պատճառը։ Եւ այդ բոլորի պատճառը նա է, ինչ որ անուանում ենք Աստուած։ Եւ ես կանգ էի առնում այդ մտքի վրայ և իմ ամբողջ էութեամբս ձգտում էի գիտակցել այդ պատճառի ներկայութիւնը։ Հէնց որ ես գիտակցեցի, որ կայ մի ոյժ, որի իշխանութեան տակ գտնվում եմ ես, անմիջապէս նաև զգացի կեանքի կարելիութիւնը։ Բայց ես հարցնում էի ինքս ինձ. «Ի՞նչ բան է սակայն այդ պատճառը, այդ զօրութիւնը։ Ի՞նչպէս մտածեմ դրա մասին, ինչպէս վերաբերուեմ նրան, որին ես անուանում եմ Աստուած»։ Եւ միմիայն ինձ ծանօթ պատասխաններն էին ծագում իմ գլխում. «Նա՝ Ստեղծող է,

Նախախնամող»։ Այս պատասխանները ինձ չէին գոհացնում, և ես զգում էի, որ իմ մէջ կորչում է այն, ինչ որ կարևոր է կեանքի համար։ Ես ընկնում էի սարսափի մէջ և սկսում աղօթել Նրան, Որին և որոնում էի, աղօթում այն մասին, որ Նա ինձ օգնէ։ Եւ որքան շատ էի աղօթում, այնքան ինձ համար աւելի ակնյայտնի էր դառնում, որ Նա ինձ չէ լսում, և չկայ մի այնպիսին, որին կարելի լինէր դիմել։ Եւ սրտի խոր յուսահատութեամբ, որ Աստուած չկայ ու չկայ, ես ասում էի. «Տէր, ողորմիր, փրկիր ինձ։ Տէր, սովորեցրու ինձ, Աստուած իմ»։ Եւ սակայն ոչ ոք չէր ողորմում ինձ, և ես զգում էի, որ իմ կեանքը նորից կանգ է առնում։

Բայց կրկին և կրկին զանազան այլ կողմերից ես գալիս էի այն համոզման, թէ՝ չէի կարող հօ առանց որևէ դրդման, պատճառի և իմաստի աշխարհ գալ, չէի կարող լինել բնից վայր ընկած թռչնակի նման, ինչպիսին ես զգում էի ինձ։ Թող ես լինեմ վայր ընկած թռչնակ, պառկեմ կռնակի վրայ, ծվծվամ բարձր խոտերի մէջ, սակայն ծվծվամ, գիտենալով որ մայրս ինձ իր մէջ է կրել, ջերմացրել, կերակրել, սիրել։ Ո՞ւր է նա, այդ մայրը։ Եթէ ինձ դէն են ձգել, ո՞վ է ձգել։ Չեմ կարող ինձանից թաքցնել, որ մէկը ինձ ծնել է սիրելով։ Ո՞վ է սակայն այդ մէկը։—Կրկին Աստուած։

Նա գիտէ և տեսնում է իմ որոնումները, յուսահատութիւնը, կռիւը։ «Նա կայ», ասում էի ես ինձ։ Եւ բաւական էր, որ մի վայրկեան ընդունէի այդ բանը, որպէս գի նոյն միջոցին բարձրանար կեանքը իմ մէջ, և ես զգայի գոյութեան թէ հնարաւորութիւնը և թէ ուրախութիւնը։ Սակայն Աստուծու գոյութեան համոզումից ես կրկին անցում էի Նրա յարաբերութիւնների որոնմանը, և կրկին ներկայանում էր իմ առջև այն Աստուածը, մեր Ստեղծողը Իր երեք դէմքով—երրորդութեամբ, Որը ուղարկեց Որդուն՝ Փրկչին։ Եւ կրկին տիեզերքից, ինձանից բաժանուած այդ առանձին Աստուածը սառոյցի պէս հալվում, հալվում էր իմ աչքերի առջև և կրկին ոչինչ չէր մնում, կրկին չորանում կեանքի աղբիւրը. ես յուսահատվում էի և զգում, որ ինձ ոչինչ ուրիշ չէ մնում անել, քան անձնասպան լինել։ Եւ՝ որ առաւել ևս վատ էր՝ զգում էի, որ այդ ևս անկարող եմ ես անել։

Ոչ թէ երկու, երեք անգամ, այլ տասնեակ, հարիւրաւոր անգամ ես ընկնում էի այդ դրութիւնների մէջ՝ մերթ ցնծութեան և կենդանութեան, մերթ կրկին յուսահատութեան և կեանքի անհնարին լինելու գիտակցութեան մէջ։

Յիշում եմ, դա վաղ գարնանը պատահեց. ես մենակ էի անտառում և ականջ դնում Նրա հնչիւններին։ Ես ականջ էի դնում և մտածում շարունակ այն մասին, թէ ինչպէս միշտ ես մտածում էի միայն միևնոյն բանի մասին՝ այս վերջին երեք տարուայ ընթացքում։ Ես դարձեալ որոնում էի Աստուծուն։

«Լա՛ւ, ո՛չ մի Աստուած չկայ»,—ասում էի ինքս ինձ.—չկայ այնպիսին, որը չլինէր իմ մտապատկերը, բայց լինէր նոյնպիսի մի իրականութիւն, ինչպիսին է իմ ամբողջ կեանքը, չկա՛յ այնպիսին։ Եւ ո՛չ մի բան, ոչ մի հրաշք չէ կարող ապացուցանել այդ, որովհետև հրաշքներն էլ պիտի իմ մտապատկերը լինեն, այն և անմիտ մտապատկեր։

«Իսկ իմ հասկացողութիւնը Աստուծու մասին, Նրա մասին, Որին ես որոնում եմ,—հարցրի ես ինձ։—Հէնց այդ հասկացողութիւնը որտեղից ստացուեց»։ Եւ այդ մտքի շնորհիւ կրկին իմ մէջ բարձրացան կեանքի ուրախ ալիքները։ Ամեն ինչ իմ շուրջը կենդանացաւ, ստացաւ իմաստ։ Սակայն իմ ուրախութիւնը երկար չտևեց։ Խելքը շարունակում էր իր գործը։

«Աստուծու գաղափարը Աստուած չէ՛,—ասացի ինքս ինձ։—Գաղափարը այն է, ինչ որ իմ մէջ է տեղի ունենում. գաղափարը Աստուծու մասին՝ դա այն է, ինչ որ ես կարող եմ իմ մէջ կա՛մ զարթեցնել կա՛մ ոչ։ Դա այն չէ, ինչ որ ես որոնում եմ։ Ես որոնում եմ Նրան, առանց որի կեանք լինել չէ կարող»։ Եւ կրկին իմ մէջն ու շուրջը սկսեց մեռնել ամեն ինչ, և ես կրկին կամենում էի սպանել ինձ։ Սակայն այստեղ ես նայեցի ինձ վրայ, թէ ինչ է տեղի ունենում իմ մէջ, և յիշեցի՝ հարիւրաւոր անգամ իմ մէջ տեղի ունեցող մեռելութիւնն ու կենդանութիւնը։ Ես յիշեցի, որ ապրել եմ միմիայն այն ժամանակներում, երբ հաւատացել եմ Աստուծուն։ Ինչպէս էր առաջ, այնպէս է և այժմ. բաւական է որ ճանաչեմ Աստուծուն, և ես ապրում եմ. բաւական է, որ մոռանամ, չհաւատամ Նրան, և ես մեռնում եմ։

Ի՞նչ բան է վերջապէս այդ կենդանութիւնն ու մեռելութիւնը։ Չէ՞ որ ես չեմ ապրում, երբ հաւատս Աստուծու գոյութեան մասին կորցնում եմ. չէ՞ որ վաղուց սպանած կը լինէի ինձ, եթէ ես իմ մէջ չունենայի Նրան գտնելու աղօտ յոյսը։ Չէ՞ որ ես ապրում եմ, ապրում միայն այն ժամանակ, երբ զգում եմ Նրան և որոնում Նրան։ Դէհ, ուրեմն էլ ինչո՞ւ եմ որոնում Նրան,—բացագանչեց իմ ձայնը։—Ահա՛ Նա։ Նա այն է, առանց Որի ապրել անհնարին է։ Ճանաչել Աստուծուն և ապրել՝ միևնոյն բանն է։ Աստուած կեանք է։ Ապրի՛ր, որոնելով

Աստուծուն, և այն ժամանակ չի լինի կեանք առանց Աստուծու։ Եւ առաւել ուժգնօրէն, քան երբևիցէ, ամեն բան լուսաւորուեց թէ իմ ներսը և թէ իմ շուրջը, որից յետոյ այդ լոյսը այլ ես ինձանից չբաժանուեց։

Եւ փրկուեցի ես անձնասպանութիւնից։ Թէ երբ և ինչ ձևով կատարուեց իմ ներսը այդ յեղաշրջումը՝ այդ ասել ես չէի կարող։ Ինչպէս որ աննկատելի կերպով, աստիճանաբար ոչնչանում էր իմ մէջ կեանքի զօրութիւնը, և ես հասայ ապրելու անկարելիութեան գաղափարին, կեանքի դադարման, անձնասպանութեան պահանջին, այնպէս էլ աստիճանաբար, աննկատելի կերպով վերադառնում էր իմ մէջ կեանքի այդ զօրութիւնը։ Եւ տարօրինակ երևոյթ, որ կեանքի այդ զօրութիւնը, որ վերադարձաւ իմ ներսը, նոր չէր, այլ շատ հին,—հէնց այն, որը գրաւում էր ինձ իմ կեանքի սկզբնական շրջաններում։

Ես ամեն բանում վերադարձայ դէպի իմ վաղեմի անցեալը, դէպի մանկութիւնն ու պատանեկութիւնը։ Ես վերադարձայ այն կամքի դաւանանքին, որը ինձ արտադրել է և ինչ-որ բան էլ կամենում է ինձանից. ես վերադարձայ այն հարցին, որ իմ կեանքի գլխաւոր և միակ նպատակն է՝ աւելի լաւ լինել, այսինքն՝ աւելի համերաշխ ապրել այդ կամքի հետ. ես վերադարձայ այն հարցին, որ այդ կամքի արտայայտութիւնը ես կը գտնեմ ինձանից թագնուած հեռաւորութեան մէջ ամբողջ մարդկութեան՝ իր ղեկավարութեան համար՝ մշակածը, այսինքն՝ ես վերադարձայ Աստուծուն հաւատալու սկզբունքին, բարոյական կատարելագործման և այն աւանդութեան, որ խօսում է կեանքի իմաստի նկատմամբ։ Միայն տարբերութիւնը նրանումն էր, որ այն ժամանակ ամեն ինչ ընդունում էի անգիտակցօրէն, այժմ սակայն գիտէի, որ առանց դրան ապրել ես այլևս չեմ կարող։

Կարծես ինձ հետ պատահեց հետևեալը. ես չեմ յիշում, թէ երբ ինձ նստեցրին նաւակ, հրեցին ինձ համար անյայտ մի ինչ-որ եզերքից, անփորձ ձեռքերիս յանձնեցին թիերը և թողին մենակ։ Ես թիավարում էի, ինչքան գիտէի, և լողում առաջ, բայց որքան հեռանում էի ափից և մօտենում կենտրոնին, այնքան հոսանքը արագանում էր, որ և հեռացնում էր ինձ իմ նպատակից,—այնքան էլ յաճախ և յաճախ հանդիպում էին ինձ լուղորդներ, որոնք և ինձ նման տարվում էին հոսանքով։ Կային միայնակ լուղորդներ, որոնք շարունակում էին թիավարել. կային լուղորդներ, որոնք թողել էին թիերը.

կային մեծ նաւակներ, հսկայական նաւեր՝ լցուած մարդկանցով. ոմանք կռւում էին հոսանքի հետ, ոմանք անձնատուր լինում նրան։ Եւ որքան ես առաջ էի լողում, այնքան աւելի՝ նայելով ներքև ուղղութեան վրայ՝ մոռանում ինձ տրուած ուղղութիւնը։ Հոսանքի ամենակենտրոնում, դէպի ցած տարուող նաւակների և նաւերի նեղ արանքներում, ես վերջնականապէս կորցրի իմ ուղղութիւնը և թիերը թողեցի։ Ամեն կողմից իմ շուրջը ցնծութեամբ և ուրախութեամբ տարվում էին առագաստներով ու թիերով լուղորդներ՝ ջրի հոսանքով, հաւատացնելով ինձ և իրար, որ այլ ուղղութիւն չէ էլ կարող լինել։ Ես հաւատացի ու լողացի նրանց հետ միասին։ Եւ տարուեցի հեռուն, այնքան հեռուն, որ սահանքաժայռերի աղմուկն էի միայն լսում, որոնց մէջ ես պէտք է ջարդ ու փշուր լինէի. և տեսնում էի դրանց խփուած ու ջարդուած նաւակներ։ Եւ ես սթափուեցի։ Երկար ժամանակ անկարող էի լինում հասկանալ, թէ ինչ է պատահել ինձ։ Իմ առաջը ես տեսնում էի միմիայն կորուստ, դէպի որը ես վազում էի, որից սակայն վախենում. ոչ մի տեղ ես չէի տեսնում փրկութիւն և չգիտէի ինչ անել. բայց դարձնելով հայեացքս յետ՝ ես տեսայ ահագին քանակութեամբ նաւակներ, որոնք առանց դադարի յամառօրէն յաղթահարում էին հոսանքը, յիշեցի եզերքը, թիերը և ուղղութիւնը և սկսեցի թիավարել յետ, հոսանքով դէպի վեր, դէպի եզերքը։

Այդ եզերքը՝ Աստուածն էր. այդ ուղղութիւնը՝ աւանդութիւնը, թիերը՝ դա ինձ տրուած ազատութիւնն էր, թիավարելու մինչև եզերքը՝ Աստուծու հետ միանալու համար։ Եւ այդպէս՝ կեանքի զօրութիւնը իմ մէջ վերանորոգուեց, և ես կրկին սկսեցի ապրել։

---

## XIII

Ես հրաժարուեցի մեր շրջանի կեանքից, ընդունելով որ դա կեանք չէ, այլ միայն կեանքի նմանութիւնը, որ առատութեան պայմանները, որոնց մէջ մենք ապրում ենք, զրկում են մեզ կեանքը ըմբռնելու հնարաւորութիւնից, որով և կեանքը ըմբռնելու համար ես պէտք է հասկանամ ոչ թէ բացառութիւնների կեանքը, մեր՝ պորտաբոյծներիս կեանքը, այլ հասարակ, աշխատաւոր ժողովրդի, այն ժողովրդի, որը կռում ու կոփումէ

թէ կեանքը և թէ այն իմաստը, որ հաղորդում է նրան։ Իբրև հասարակ ժողովուրդ՝ իմ շուրջը ռուս ժողովուրդն էր, ուստի և ես դիմեցի նրան ու այն իմաստին, որը նա հաղորդում է կեանքին։ Այդ իմաստը, եթէ կարելի է արտայայտել այն, հետևեալն էր։ Իւրաքանչիւր մարդ աշխարհ է գալիս Աստուծու կամքով։ Եւ Աստուած մարդուն այնպէս է ստեղծել, որ իւրաքանչիւր անհատ կարող է իրան և՛ կորցնել, և՛ փրկել։ Կեանքի մէջ մարդու նպատակն է՝ փրկել իր հոգին. հոգին փրկելու համար պէտք է ապրել Աստուծու կամքով, իսկ Աստուծու կամքով ապրելու համար պէտք է հրաժարուել կեանքի բոլոր զըւարճութիւններից, աշխատել, հնազանդուել, համբերել և լինել ողորմած։ Այդ իմաստը ժողովուրդը քաղում է այն բոլոր դաւանաբանութիւնից, որը աւանդուել է և աւանդվում է նրան ժողովրդի մէջ ապրող հովիւներից և աւանդութիւններից։ Այդ իմաստը ինձ համար պարզ էր և իմ սրտին մօտիկ։ Բայց ժողովրդական հաւատքի այդ իմաստը անխզելի կերպով կապուած է՝ մեր ոչ-աղանդաւոր ժողովրդի մէջ, որի շրջանում ես ապրել եմ՝ շատ բանով, որ ինձ վրայ վանողական հետևանք էր ունենում և թւում անբացատրելի. խորհուրդներ, եկեղեցական արարողութիւններ, պահք, մասունքների և սրբի պատկերների պաշտամունքը։ Մէկը միւսից բաժանել ժողովուրդը չէ կարող. չէի կարող և ես։ Որքան էլ ինձ տարօրինակ երևար մեծ մասը այն ամենից, ինչ որ մտնում էր ժողովրդի դաւանանքի մէջ, այնուամենայնիւ ես ընդունեցի բոլորը. յաճախում էի ժամերգութիւններին, առաւօտ և երեկոյ կանգնում էի աղօթքի, պաս էի պահում, հաղորդվում, և առաջին նուագ բանականութիւնս չէր ընդդիմանում դրան։ Այն, ինչ որ առաջ թւում էր ինձ անկարելի, այժմ իմ մէջ դիմադրութիւն չէր առաջացնում։ Իմ վերաբերմունքը դէպի դաւանանքը անցեալում և այժմ միանգամայն տարբեր էր։ Առաջ կեանքը ինձ թւում էր իմաստալից, իսկ դաւանանքը՝ ինչ-որ միանգամայն անպէտք, ինձ համար անիմաստ և կեանքի հետ ոչ մի կապ չունեցող դրութիւնների արհեստական հաստատութիւն։ Ես հարցրի այն ժամանակ ինձ, թէ ինչ իմաստ ունեն այդ դրութիւնները. և, համոզուելով որ նրանք չունեն այդպիսին, ես հրաժարուեցի դրանցից։ Այժմ սակայն, ընդհակառակը, ես քաջ գիտէի, որ իմ կեանքը չունի և չէ կարող ունենալ ոչ մի իմաստ. և դաւանանքի դրութիւնները ոչ միայն թւում էին անպէտք, այլ և իրական փորձով եկել էի այն համոզման, որ միմիայն դաւանանքի այդ դրութիւններն են իմաստ տալիս կեանքին։ Առաջ ես նայում էի նրանց վրայ

*իբրև միանգամայն անպէտք շաղակրատութեան վրայ. այժմ սակայն, եթէ ես չէի էլ հասկանում նրանց, գիտէի, որ իմաստը նրանց մէջ է, և կրկնում էի, որ պէտք է սովորել՝ նրանց հասկանալու համար։*

*Հետևեալ դատողութիւնն էի անում ես և ասում ինքս ինձ. դաւանանքի գիտութիւնը, ինչպէս և ամբողջ մարդկութիւնը իր բանականութեան հետ, բղխում է խորհրդաւոր սկզբունքից։ Այդ սկզբունքը՝ Աստուած է, սկզբունք՝ և՛ մարդկային մարմնի, և՛ Նրա բանականութեան։ Ինչպէս որ ժառանգաբար Աստուծուց ինձ է հասել իմ մարմինը, այնպէս էլ հասել են ինձ իմ բանականութիւնն ու կեանքի ըմբռնողութիւնը, ուստի և կեանքի այդ ըմբռնողութեան զարգացման բոլոր աստիճանները չէին կարող անհիմն լինել։ Այն ամենը, որին մարդիկ ճշմարտօրէն են հաւատում, պէտք է լինի ճշմարտութիւն. Նա կարող է տարբեր կերպով արտայայտուել, սակայն սուտ Նա չէ կարող լինել, ուստի և եթէ Նա ինձ թւում է անհիմն, սուտ, ապա դա նշանակում է միայն, որ ես չեմ ըմբռնում այն։ Բացի այդ՝ ես ինձ ասում էի. իւրաքանչիւր դաւանանքի էութիւն կայանում է նրանում, որ Նա կեանքին հաղորդում է մի այնպիսի իմաստ, որը չէ ոչնչանում մահով։ Բնական է՝ որպէս զի դաւանանքը կարող լինի պատասխանելու մեռնողի հարցին, լինի այդ հարցը ճոխութեան մէջ մեռնող թագաւորից, աշխատանքից հիւծուած, ծերունի ստրկից, անգիտակից մանկան բերանից, իմաստուն ծերուկից, կիսախելագար պառաւից թէ երիտասարդ բախտաւոր կնոջից, որ զրկւում է պատանու կրքերից, կեանքի բազմազան պայմանների և կրթութեան բոլոր մարդկանցից,— բնական է, եթէ կայ մի պատասխան որ պատասխանէր կեանքի յաւիտենական միակ հարցին, թէ «ինչո՞ւ եմ ապրում, ինչ դուրս կը գայ իմ կեանքից», այդ պատասխանը, իր էութեամբ միակը, պէտք է լինի անսահմանօրէն բազմազան իր արտայայտութիւնների մէջ. և որչափ որ միաձոյլ, որչափ ճշմարտապատում է, խորունկ այդ պատասխանը, այնչափ բնականօրէն աւելի տարօրինակ ու այլանդակ պէտք է լինի նա իր արտայայտման փորձերում՝ համապատասխան իւրաքանչիւրի կրթութեան և կացութեան։*

*Բայց այդ դատողութիւնները՝ ինձ համար դաւանանքի ծիսական կողմի տարօրինակութիւնը արդարացնող՝ բաւական չէին, որպէս զի ես, ինձ համար կեանքի այդ միակ գործում, դաւանանքի մէջ թոյլ տայի ինձ անել այնպիսի գործողութիւններ, որոնց մէջ ես ինքս կասկածէի. ես իմ հոգու բոլոր զօրու-*

թեամբ կամենում էի ձուլուել ժողովրդի հետ, կատարելով նրա դաւանանքի ծիսական մասը, սակայն ես չէի կարող անել այդ։ Զգում էի, որ դրանով ես կեղծած կը լինէի իմ առջև, ծաղրած կը լինէի այն, որը ինձ համար սուրբ է, եթէ այդպէս վարուած լինէի։ Բայց այստեղ ինձ օգնութեան հասան ռուսական մեր նորագոյն աստուածաբանական հեղինակութիւնները։

Ըստ բացատրութեան այդ աստուածաբանների, դաւանանքի հիմնական առարկութիւնը՝ եկեղեցու անսխալականութեան մէջ է։ Այդ դօգմայի ընդունելուցն է բղխում՝ իբրև անհրաժեշտ հետևանք՝ եկեղեցու ամբողջ դաւանաբանութեան ճշմարտութիւնը։ Եկեղեցին, որպէս հաւաքածու հաւատացեալների՝ կապակցուած սիրոյ գաղափարով, ուստի և օժտուած ճշմարիտ նշանակութեամբ, ինձ համար դարձաւ դաւանանքիս հիմունքը։ Ես ասում էի ինձ, որ աստուածային ճշմարտութիւնը չէ կարող մատչելի լինել միայն մի անհատի համար. նա բացվում է միմիայն մարդկանց միահամուռութեան առջև, որոնք միացած են իրար հետ սիրով։ Ճշմարտութիւնը ըմբռնելու համար՝ չպէտք է բաժանուել. իսկ չբաժանուելու համար պէտք է սիրել և հաշտուել այն բանի հետ, որին համաձայն ես։ Ճշմարտութիւնը կը պարզուի սիրոյ առջև, ուստի և, եթէ դու եկեղեցու ծէսերին չես հպատակվում, ապա խախտում ես սէրը. իսկ խախտելով սէրը, դու զրկվում ես ճշմարտութիւնը ըմբռնելու հնարաւորութիւնից։ Այն ժամանակ ես չէի նկատում այն սոփեստութիւնը, որով օժտուած էր այդ դատողութիւնը։ Այն ժամանակ ես չէի նկատում և այն, որ սիրոյ միութիւնը կարող է ստեղծել մեծագոյն սէր, սակայն երբէք աստուածային ճշմարտութիւն՝ Նիկիական խորհրդանշանի մէջ արտայայտուած որոշ խօսքերով. չէի նկատում այն ևս, որ սէրը երբէք չէ կարող ճշմարտութեան որոշ արտայայտութիւնը դարձնել պարտաւորեցուցիչ՝ միութեան համար։ Այն ժամանակ ես չէի նկատում այդ դատողութեան սխալանքները և դրա շնորհիւ հնարաւորութիւն ստացայ ընդունելու և կատարելու ուղղափառ եկեղեցու բոլոր ծէսերը, առանց հասկանալու դրանց մեծագոյն մասը։ Ես այն ժամանակ իմ հոգու բոլոր զօրութեամբ ճգնում էի խուսափել ամեն մի դատողութիւնից, հակասութիւնից և փորձում էի բացատրել, ըստ հնարաւորութեան խելացիօրէն, եկեղեցական այն հիմունքները, որոնց ես հանդիպում էի։

Կատարելով եկեղեցական ծէսերը, ես խաղաղեցնում էի իմ բանականութիւնը և ինքս ինձ ենթարկում էի այն աւան-

դութեան, որ ունէր համայն մարդկութիւնը։ Ես միանում էի իմ նախորդների հետ, իմ սիրելիների՝ հօրս, մօրս, պապերիս, տատերիս հետ։ Նրանք և բոլոր նախնիքները հաւատում էին և ապրում. ինձ էլ նրանք արտադրեցին։ Ես միանում էի նաև ինձ համար յարգելի՝ ժողովրդի մարդկանցից միլիօնաւորների հետ։ Բացի այդ՝ այդ գործողութիւնները ինքնին ոչինչ վատ չունէին իրանց մէջ (վատ էի համարում ես շուայտ ցանկութիւնների շոյումը)։ Առաւօտեան վաղ վեր կենալով ժամերգութեան համար, ես գիտէի, որ լաւ բան եմ անում, հէնց միայն այն հիման վրայ, որ—սեփական խելքի հպարտութեան խոնարհման համար, իմ նախահայրերի և ժամանակակիցների հետ մերձեցման համար, յանուն կեանքի իմաստի որոնման—դրանով ես զոհում էի իմ մարմնի հանգստութիւնը։ Նոյնն էր և հաղորդուելիս, իւրաքանչիւր օր աղօթքս կարդալիս՝ երկրպագութիւններով, նոյնը և բոլոր պահքերը պահելիս։ Որչափ էլ այդ զոհողութիւնները աննշան լինէին, այնուամենայնիւ նրանք յանուն լաւագոյնի էին կատարվում։ Ես հաղորդվում, պահք էի պահում, օրուայ պատշաճ աղօթքներ ասում թէ տանը և թէ եկեղեցում։ Եկեղեցական արարողութեան միջոցին ես թափանցում էի իւրաքանչիւր խօսքի մէջ և տալիս էի նրանց իմաստ՝ ըստ հնարաւորութեան։ Պատարագին ինձ համար ամենանշանաւոր բառերն էին. «սիրե՛նք իրար համախոհութեամբ»... Յետագայ խօսքերը՝ «միաբան դաւանենք Հօրը և Որդուն և Սուրբ Հոգուն»,—ես բաց էի թողնում, որովհետև նրանք ինձ համար անհասկանալի էին։

---

## XIV

Այնքան անհրաժեշտ էր այն ժամանակ ինձ հաւատքը՝ ապրելու համար, որ ես անգիտակցօրէն ծածկում էի ինձանից հակասութիւնները և դաւանաբանութեան մթութիւնը։ Սակայն ծէսերին իմաստ հաղորդելու ճիգը ունէր իր սահմանը։ Եթէ մաղթանքը ինձ համար հետզհետէ հասկանալի էր դառնում իր գլխաւոր խօսքերի մէջ. եթէ ես մի կերպ բացատրում էի այս խօսքերը՝ «Մեր Տիրամօրը՝ ս. Աստուածածնին և բոլոր սրբերին յիշատակելով, ինքներս մեզ և իրար, ընդ նմին մեր ամբողջ կեանքը Քրիստոս Աստուծուն նուիրենք». եթէ ես թա-

գաւորի և նրա ծնողների մասին արտասանուած աղօթքների յաճախակի կրկնութիւնը բացատրում էի նրանով, որ նրանք աւելի շատ ենթակայ են գայթակղութեան, քան ուրիշները, ուստի և աւելի շատ են կարօտ աղօթքների. ապա աղօթքները՝ թշնամիներին և հակառակորդներին ոտնատակ տալով յաղթահարելու մասին՝ եթէ ես բացատրում էի նրանով, որ թշնամին չարիք է,—այդ և ուրիշ աղօթքները, ինչպէս քերովբէական և ընծայման բոլոր խորհուրդները կամ «զինուորեալ զօրապետի» և այլն, ամբողջ ժամերգութեան գրեթէ երկու-երրորդ մասը կամ բոլորովին չունէին բացատրութիւն, կամ զգում էի, որ ես, յատկացնելով նրանց մի բացատրութիւն, կեղծում եմ և դրանով հիմնովին կործանում իմ յարաբերութիւնը առ Աստուած, միանգամայն կորցնում եմ հաւատքի ամեն հնարաւորութիւն։

Միևնոյն բանն էի զգում գլխաւոր տօները տօնելիս։ Յիշել շաբաթ օրը, այն է՝ նուիրել մի օր Աստուծուն դիմելու համար,—հասկանալի էր ինձ։ Սակայն գլխաւոր տօնը՝ յարութեան դէպքի յիշողութիւնն էր, որի իրողութիւն լինելը ոչ մի պարագայում ես երևակայել և հասկանալ չէի կարող։ Եւ յարութեան այդ անունով էր կոչվում իւրաքանչիւր շաբաթուայ տօնուող օրը։ Եւ այդ օրերին հէնց կատարվում էր հաղորդութեան խորհուրդը, որը ինձ համար միանգամայն անհասկանալի էր։ Մնացած բոլոր տասն-երկու տօները, բացի Քրիստոսի ծընունդից, յիշողութիւններ էին հրաշքների նկատմամբ, որոնց մասին ես աշխատում էի չմտածել՝ չժխտելու համար. Համբարձումը, Հոգեգալուստը, Աստուածայայտնութիւնը, պաշտպանութիւն Աստուածածնի և այլն։ Զգալով որ այդ տօների տօնման միջոցին կարևորութիւնը վերագրվում է հէնց այն բանին, որը ինձ համար կազմում էր միանգամայն հակառակ կարևորութիւն, ահա այդ պարագայում ես կամ հնարում էի ինձ հանգստացնող բացատրութիւն և կամ փակում աչքերս՝ չտեսնելու համար այն, ինչ որ ինձ գայթակղութիւն էր պատճառում։

Այդ բանը իմ մէջ ամենազօրեղ կերպով արտայայտվում էր այն ժամանակ, երբ ես մասնակից էի լինում կարևորագոյն համարուող եկեղեցական սովորական խորհուրդների մէջ՝ մկրտութեան և հաղորդի։ Այստեղ ես ընդհարվում էի ոչ թէ անհասկանալի, այլ կատարելապէս հասկանալի գործողութիւնների հետ. այդ գործողութիւնները ինձ թւում էին գայթակղեցուցիչ, և ես կանգնած էի մի դիլեմի առջև՝ կամ կեղծել, կամ վէճն շպրտել։

Երբէք չեմ մոռանայ այն տանջալից դրութիւնը, որը ես

զգացի՝ երկար տարիներից յետոյ առաջին անգամ հաղորդուելիս։ Ժամասացութիւնները, խոստովանութիւնը, կանոնները — այդ ամենը ինձ համար հասկանալի էին և իմ մէջ առաջացնում էին այն ցնծագին գիտակցութիւնը, թէ կեանքի իմաստը բացվում է իմ առջև։ Հաղորդման խորհուրդը ես բացատրում էի որպէս մի գործողութիւն, որ կատարվում է Քրիստոսի յիշատակութեան համար և նշանակում է մեղքերի սրբումն ու Քրիստոսի վարդապետութեան լիակատար ըմբռնումը։ Թէկուզ այդ բացատրութիւնը լինէր արհեստական, այնուամենայնիւ ես չէի նկատում նրա արհեստականութիւնը։ Այնքան ուրախալի էր ինձ համար՝ ստորանալով և հնազանդուելով հոգևորականի, հասարակ, վախկոտ քահանայի առջև՝ բաց անել սեփական հոգու ամբողջ աղտեղութիւնը, զղջալով սեփական մոլութիւնները. այնքան ուրախալի էր հայրերի հեզութեան հետ մտքով ձուլուելը, այն հայրերի, որոնք գրել են կանոնների աղօթները. այնքան ուրախալի էր միացումը բոլոր՝ անցեալում և այժմ՝ հաւատացեալների հետ, որ ես չէի զգում իմ բացատրութեան արհեստականութիւնը։ Սակայն երբ ես մօտեցայ եկեղեցու բեմի դռներին և քահանան ստիպեց ինձ կրկնել, որ ես հաւատում եմ, թէ իմ կլլանածը ճշմարիտ մարմին է և արիւն, այդ վայրկեանին սիրտս մի բան խրուեց. բաւական չէր, որ դա մի կեղծիք էր, դա և այնպիսի մէկի խստագոյն պահանջն էր, որը, ըստ երևոյթին, երբէք էլ չէ իմացել, թէ ինչ է դաւանանքը։

Սակայն այժմ ես թոյլ եմ տալիս ինձ ասել, որ դա մի խստագոյն պահանջ էր, թէպէտ այն ժամանակ դրա մասին ես չեմ էլ մտածել. բայց դա անպատմելի ցաւ էր պատճառում ինձ։ Ես այլևս չէի գտնվում այն դրութեան մէջ, ինչպէս երիտասարդութեան օրերումս, երբ ինձ համար կեանքում ամեն ինչ պարզ էր թւում. դաւանանքի գաղափարին ես հասայ այն պատճառով, որ դաւանանքից զատ իսկապէս ոչինչ չգտայ, բացի կորուստը, ուստի և դէն շպրտել այդ դաւանանքը՝ անհնարին էր. և ես հպատակուեցի։ Ես գտայ իմ հոգու մէջ այն կորովը, որը ինձ օգնեց տանելու այդ ամենը համբերութեամբ։ Դա՝ ինքնաստորացման և հնազանդութեան զգացումն էր։ Ես հնազանդուեցի. այդ արիւնն ու մարմինը առանց սրբապիղծ զգացումների կլանեցի՝ հաւատալու ցանկութեամբ, սակայն հարուածը արդէն տրուած էր։ Եւ իմանալով, թէ ինչ է սպասում ինձ առաջիկայում, ես այլևս անկարող էի երկրորդ անգամ հաղորդուելու գնալ։

Ես շարունակում էի միևնոյն ձևով կատարել եկեղեցական ծէսերը և տակաւին հաւատում էի, որ իմ ընդունած դաւանաբանութիւնը ճշմարտութիւն է․ և իմ մէջ տեղի էր ունենում այն, որը ինձ համար այժմ պարզ է, սակայն այն ժամանակ ինձ թւում էր տարօրինակ։

Լսում էի ես անգրագէտ գիւղացու, ուխտաւորի խօսակցութիւնը Աստուծու, դաւանանքի, կեանքի, փրկութեան մասին, և դաւանագիտութիւնը իմ առջև պարզվում էր․ լսելով ժողովրդի դատողութիւնները կեանքի և դաւանանքի մասին, ես մօտենում էի նրան աւելի և աւելի հասկանում ճշմարտութիւնը։ Նոյնն էր լինում, երբ կարդում էի Յայսմաւուրքն ու տօնական գրքերը․ դա ինձ համար մի հաճելի ընթերցանութիւն էր։ Բացառութեամբ հրաշքների,—նայելով դրանց վրայ որպէս մի միտք արտայայտող ֆաբուլայի վրայ,—այդ ընթերցանութիւնը բաց էր անում իմ առջև կեանքի իմաստը։ Այնտեղ կային Մեծ Մակարիոսի, Յովսափատ արքայազնի (Բուդդայի պատմութիւնը) կենսագրութիւնները, այնտեղ կային Յովհան Ոսկեբերանի խօսքերը, պատմութիւններ ջրհորի ճանապարհորդի, ոսկի գտնող աբեղայի, մաքսաւոր Պետրոսի մասին․ այնտեղ՝ պատմութիւնն է այն նահատակների, որոնք կրկնում էին միաբերան, թէ մահը չէ ոչնչացնում կեանքը․ այնտեղ է և՛ անգրագէտ, անմիտ ու եկեղեցական ուսմունքներից ոչինչ չիմացողների փրկութեան պատմութիւնը։ Բայց բաւական էր ինձ որոշ մերձեցումն ունենալ գիտնական հաւատացեալների հետ, կամ վերցնել նրանց գրքերը, որպէս զի իմ մէջ ծագէր կասկած, անբաւականութիւն ու վիճելու բարկութիւն, որով զգում էի, թէ որքան շատ եմ թափանցում նրանց ճոռոմաբանութեան մէջ, այնքան հեռանում ճշմարտութիւնից և քայլում դէպի կորուստ։

---

## XV

Քանի՜ անգամ ես նախանձել եմ գիւղացիներին՝ նրանց անգրագիտութեան և տգիտութեան համար։ Դաւանանքի այն դրութիւնները, որոնցից բղխում էին ինձ համար ակնյայտնի անհեթեթութիւններ, նրանց համար սակայն ոչ մի կեղծիք չէին ներկայացնում․ նրանք կարող էին ընդունել դրանց և միև-

նոյն ժամանակ հաւատալ ճշմարտութեան, այն ճշմարտութեան, որին ես ևս հաւատում էի։ Միմիայն ինձ դժբախտիս համար պարզ էր, որ ճշմարտութիւնը ամենանուրբ թելերով հիւսուած է կեղծիքի հետ, և որ այդ ձևով ես անկարող եմ ընդունել այն։

Այդպէս ես ապրեցի երեք տարի և սկիզբներում, երբ, իբրև նոր հաւատացեալ, աստիճանաբար ծանօթացայ ճշմարտութեան հետ, միմիայն բնազդով առաջնորդուելով էի գնում այնտեղ, ուր ինձ աւելի պայծառ էր թւում, և այդ ընդհարումները ինձ աւելի պակաս չափով էին շանթահարում։ Երբ ես որևէ բան չէի ըմբռնում, ինքս ինձ ասում էի. «Ես մեղաւոր եմ, ես յիմար եմ»։ Սակայն ո՛րչափ շատ եմ ես թափանցել այն ճշմարտութիւնները, որոնց ուսումնասիրել եմ, ո՛րչափ նրանք հետզհետէ դառնում էին կեանքի հիմունք, այնչափ ծանր և ազդու էին լինում այդ ընդհարումները. և այնչափ սուր էր դառնում այն գիծը, որ կար այն բանի մէջ, որը ես չէի հասկանում, որովհետև ես չգիտեմ հասկանալ այն, որը չէ կարելի հասկանալ առանց որ դու քեզ քո առաջ խաբէիր։

Զնայելով այդ կասկածանքներին և տառապանքներին, ես տակաւին մնում էի ուղղափառութեան մէջ։ Սակայն առաջ եկան կեանքի խնդիրներ, որոնց պէտք էր լուծում տալ, և այդտեղ այդ խնդիրների լուծումը եկեղեցու կողմից—հակառակ՝ դաւանանքի այն հիմունքին, որով ես ապրում էի—վերջնականապէս ստիպեց ինձ հրաժարուելու ուղղափառութեանը պատկանելու հնարաւորութիւնից։ Այդ հարցերն էին՝ նախ ուղղափառ եկեղեցու վերաբերմունքը ուրիշ եկեղեցիների՝ կաթօլիկութեան և այսպէս ասած աղանդաւորներին։ Այդ ժամանակները՝ շնորհիւ իմ ունեցած հետաքրքրութեանը դաւանանքի նկատմամբ՝ ես մօտեցայ զանազան դաւանանքների հաւատացեալներին՝ կաթօլիկներին, բողոքականներին, հնածէսներին, մօլօկաններին և ուրիշներին։ Եւ դրանց մէջ շատերին ես գտայ բարոյապէս բարձր և ճշմարիտ հաւատացեալներ։ Ես կամենում էի այդ մարդկանց եղբայրը լինել։ Եւ սակայն ի՞նչ։ Այն ուսմունքը, որը ինձ խոստացաւ միացնելու բոլորին մի հաւատով և մի սիրով, հէնց այդ ուսմունքը յանձին իր լաւագոյն ներկայացուցիչների յայտնեց ինձ, որ բոլոր այդ մարդիկ խարխափում են կեղծիքի մէջ, որ այն, ինչ որ նրանց կեանքին զօրութիւն է հաղորդում, սատանայի փորձն է, և որ միմիայն մենք ենք տիրապետում միակ հնարաւոր ճշմարտութեանը։ Եւ ես տեսայ, թէ ինչպէս սրանց հաւատքը չընդունողներին ուղղափառները համարում են հերետիկոսներ հէնց միևնոյն կերպ, ինչպէս կաթօլիկներն ու

ուրիշները ուղղափառութիւնն են համարում հերետիկոսական. Ես տեսայ, որ ուղղափառութիւնը իր դաւանանքի արտաքին խորհրդանշաններն ու խօսքերը չդաւանողներին՝ թէպէտ նա այդ բանը ճգնում է քօղարկելու՝ նա վերաբերում է թշնամաբար, ինչպէս որ և պէտք է լինէր, որովհետև առաջին՝ այն պնդումը, թէ դու կեղծիքի մէջ ես, իսկ ես ճշմարտութեան, ամենախստագոյն խօսքն է, որ կարող է ասել մի մարդ միւսին, և՝ երկրորդ՝ որովհետև իր զաւակներին և եղբայրներին սիրող անձը անկարող է թշնամաբար չվերաբերուել այն մարդկանց նկատմամբ, որոնք ցանկանում են նրա մանուկներին և եղբայրներին դարձնել մոլար դաւանանքի։ Եւ այդ թշնամութիւնը սաստկանում է դաւանաբանութեան գիտութեան ընդլայնման հետ միասին։ Եւ ինձ՝ ճշմարտութիւնը սիրոյ միութեան մէջ ենթադրողիս համար ակամայից պարզուեց, որ դաւանաբանութիւնը ինքնին կործանում է այն, ինչ որ նա ինքը պէտք է ստեղծէր։

Այդ գայթակղութիւնը այն աստիճան ակնյայտնի է, այն աստիճան, մանաւանդ մեզ՝ կրթուածներիս, այլ երկիրներում եղած մարդկանցս համար,—որտեղ դաւանվում են զանազան կրօններ, որտեղ ականատես ենք եղել այն արհամարհական, ինքնավստահ, անյողդողդ ժխտման, որով կաթօլիկը վերաբերվում է ուղղափառի և բողոքականի նկատմամբ, ուղղափառը՝ կաթօլիկի և բողոքականի, իսկ բողոքականը՝ երկուսի նկատմամբ, նոյն վերաբերմունքը նաև հնածէսի, պաշկօվցու, շէքէրի և բոլոր դաւանանքների,—որ գայթակղութեան ակնյայտնի լինելը առաջին նուագ տարակուսելի է թւում։ Ասում ես ինքդ քեզ. հօ չէ՛ կարող լինել, որ այդ ամենը մի հասարակ երևոյթ լինի, որ մարդիկ այնուամենայնիւ չտեսնեն այն, որ եթէ երկու պնդումները իրար ժխտում են, ապա ուրեմն ոչ մէկի և ոչ միւսի մէջ չկայ այն միակ ճշմարտութիւնը, որպիսին պէտք է լինի դաւանանքը։ Այստեղ ինչ-որ բան կայ։ Կայ որևէ բացատրութիւն. հէնց ես մտածում էի, որ կայ, և որոնում էի այդ բացատրութիւնը, կարդում այն բոլորը, ինչ կարողանում էի և ինչ վերաբերում էր այդ առարկային, խորհրդակցում բոլոր նրանց հետ, որոնց հետ հնար ունէի։ Եւ ոչ մի բացատրութիւն ես չէի ստանում, բացի նրանից, որով սումական հուսարները կարծում են, թէ առաջին գունդը տիեզերքում՝ սումայի հուսարականն է, իսկ դեղին ուլանները կարծում են, թէ տիեզերքում առաջին գունդը՝ դա դեղին ուլանականն է։ Բազմազան դաւանանքների հոգևոր անձերը՝ նրանց լաւագոյն ներկայացուցիչները ոչինչ չասացին ինձ, բացի այն,

*որ իրանց հաւատքով՝ նրանք ճշմարտութեանը մօտ են, իսկ ուրիշները՝ մոլորութեան, և որ այն բոլորը, ինչ որ նրանք կարող են անել միւսների նկատմամբ, դա նրանց աղօթքն է մոլորեալների մասին։ Ես գնացել եմ վարդապետների, հովուապետների, ճգնաւորների, միանձնների մօտ և հարցրել, բայց ոչ ոք ոչ մի փորձ չէ արել՝ բացատրելու ինձ այդ գայթակղութիւնը։ Մէկը միայն նրանցից բացատրեց ինձ ամեն բան, սակայն բացատրեց այնպէս, որ ես այլևս ոչ ոքին չդիմեցի այդ հարցով։*

*Ես ասում էի այն մասին, թէ իւրաքանչիւր ոչ-հաւատացեալի համար, որ գալիս է դարձի (իսկ այդպիսի դարձի պէտք է բերուի մեր ամբողջ երիտասարդ սերունդը); այդ հարցը առաջնակարգ տեղն է բռնում. ինչու ճշմարտութիւնը լիւթերականութեան, կաթոլիցիզմի մէջ չէ, այլ ուղղափառութեան։ Նրան սովորեցնում են գիմնազիայում, և նա չէ կարող չիմանալ,—ինչպէս որ այդ չգիտեն գիւղացիները,—որ բողոքականը, կաթոլիկը նոյնպէս պնդում են իրանց դաւանանքի միակ ճշմարիտ լինելը։ Պատմական ապացոյցները, որոնց՝ իւրաքանչիւր դաւանանք իր կողմն է թեքում, բաւական չեն։ Չէ՞ կարելի արդեօք,—ասում էի ես,—գիտութիւնը աւելի բարձր ըմբռնել, այնպէս որ գիտութեան այդ բարձունքից ոչնչանային բոլոր տարբերութիւնները, ինչպէս նրանք ոչնչանում են ճշմարիտ հաւատացեալի համար։ Չէ՞ կարելի արդեօք գնալ աւելի առաջ այն ճանապարհով, որով գնում ենք հնածէսերի հետ։ Նրանք պնդում են, որ խաչը, ալէլուիան և եկեղեցու բեմի շուրջկալելը մեզանում այլ է։ Մենք ասացինք. դուք հաւատում էք Նիկիոյ Խորհրդանշանին, եօթը խորհուրդներին. մենք էլ ենք հաւատում։ Եկէք հաստատ լինենք դրանում, իսկ մնացածը կատարեցէք, ինչպէս ուզում էք։ Մենք միացանք նըրանց հետ այն բանով, որ էականը առաւել բարձր դասեցինք, քան ոչ-էականը։ Չէ՞ կարելի արդեօք այժմ ասել կաթոլիկներին. դուք այս-ինչ կամ այն-ինչ բանին հաւատում էք՝ գլխաւոր հարցում, իսկ Filio-que-ի և պապի նկատմամբ եղէք՝ ինչպէս կամենաք։ Չէ՞ կարելի միթէ միևնոյնը ասել նաև բողոքականներին՝ միանալով նրանց հետ գլխաւոր հարցում։ Իմ զրուցակիցը ինձ հետ համաձայնուեց, սակայն առարկեց, որ այդպիսի զիջումները առաջ կը բերեն դժկամակութիւններ հոգևոր իշխանութեան վերաբերմամբ այն մասին, թէ նա նախնիների կրօնից շեղվում է, և առաջ կը գայ բաժանումն, իսկ հոգևոր իշխանութեան կոչումն է՝ պահպանել յոյն-ռուսական ուղղա-*

փառ դաւանանքը՝ իր նախնիներից նրան յանձնուած ամբողջ մաքրութեամբ։

Եւ ես ամեն ինչ հասկացայ։ Ես որոնում եմ հաւատք, կեանքի զօրութիւն, իսկ նրանք որոնում են մարդկանց առջև մարդկային յայտնի պարտականութիւնների կատարման լաւագոյն միջոց։ Եւ կատարելով մարդկային այդ գործերը՝ նրանք այդ կատարում են ըստ մարդկայինի։ Որքան էլ նրանք խօսեն մոլորեալ եղբայրների վրայ ունեցած իրանց ցաւակցութեան մասին, նրանց համար Բարձրեալի աթոռի առջև վերառաքուած աղօթքների մասին, այնու ամենայն մարդկային գործերը կատարելու համար անհրաժեշտ է բռնութիւն, որը և միշտ յարակցուած է եղել, յարակցվում է և պիտի յարակցուի։ Եթէ երկու դաւանանքներ իրանց համարում են ճշմարիտ, բայց միմեանց՝ մոլար, ապա, կամենալով եղբայրներին գրաւել դէպի ճշմարտութիւն, նրանք պիտի քարոզեն իրանց վարդապետութիւնը։ Իսկ եթէ մոլար վարդապետութիւնը քարոզվում է ճշմարտութեան մէջ գտնուող եկեղեցու անփորձ որդիներին, ապա այդ եկեղեցին չէ կարող չոչնչացնել այն գրքերը, չհեռացնել այն մարդուն, որոնք գայթակղեցնում են նրա որդիներին։ Ապա ի՞նչ անել մոլար՝ ըստ ուղղափառ եկեղեցու՝ դաւանանքի բոցով այրուող այն աղանդաւորին, որը կեանքի ամենանշանաւոր գործում՝ դաւանանքի մէջ՝ գայթակղութիւն է պատճառում եկեղեցու որդիներին։ Ի՞նչպէս վարուել նրա հետ, ի՞նչպէս չկտրել նրա գլուխը կամ զնդանը չգցել։ Ալէքսէյ Միխայլովիչի*) ժամանակ մարդկանց այրում էին խարոյկի վրայ, այսինքն՝ իր ժամանակի ամենածանր պատժի էին ենթարկում, այժմ նոյնպէս ենթարկում են ամենածանր պատժի՝ առանձին բանտարգելութեան։ Եւ ես ուշադրութիւն դարձրի այն բանի վրայ, թէ յանուն դաւանանքի ինչ է կատարվում. և սարսափեցի, որից յետոյ ուղղափառութիւնից գրեթէ հրաժարուեցի։

Եկեղեցու երկրորդ վերաբերմունքը կենսական խնդիրների նկատմամբ՝ պատերազմի և մահապատիժների նկատմամբ էր։

Այդ ժամանակները Ռուսաստանը պատերազմում էր։ Եւ ռուսները սկսեցին յանուն քրիստոնէական սիրոյ սպանել իրանց եղբայրներին։ Չմտածել այդ մասին՝ անհնարին էր։ Չտեսնել, որ սպանութիւնը չարիք է՝ հակառակ իւրաքանչիւր կրօնի ամենատարրական հիմունքներին, անհնարին էր։ Բայց միևնոյն ժամանակ եկեղեցիներում աղօթում էին մեր զէնքի աջո-

*) Թագաւոր ռուսաց, XVII դարում։ Թ.

*ցութեան համար, իսկ դաւանանքի ուսուցիչները այդ սպանութիւնը ուղղակի դաւանանքից բղխող գործ էին համարում։ Եւ ոչ միայն պատերազմի այդ սպանութիւնները, այլ և ներքին խառնակ դրութեան միջոցին, որը յաջորդեց պատերազմին, ես տեսայ եկեղեցու պաշտօնեաներին, նրա ուսուցիչներին, աբեղաներին, միանձներին, որոնք մոլորուած, անօգնական պատանիների սպանութիւնը արդարացնում էին։ Եւ ես ուշադրութիւն դարձրի այն ամենի վրայ, ինչ որ քրիստոնէութիւնը դաւանող մարդիկ անում էին. տեսայ և սարսափեցի։*

---

## XVI

*Եւ ոչ միայն դադարեցի կասկածելուց, այլ և կատարելապէս համոզուեցի, որ դաւանութեան այն գիտութեան մէջ, որին ես միացել էի, ամեն բան ճշմարիտ չէ։ Առաջ ես կարող էի ասել, թէ ամբողջ դաւանաբանութիւնը՝ մոլար բան է. սակայն այժմ չէր կարելի այդ ասել։ Ամբողջ ժողովուրդը ունէր այդ ճշմարտութեան գիտութիւնը. դա անկասկած էր, որովհետև այլ կերպ նա չէր ապրի։ Բացի դրանից՝ ճշմարտութեան այդ գիտութիւնը ինձ համար էլ արդէն մատչելի էր դարձել, և ես ապրում էի Նրանով և զգում Նրա ամբողջ արդարութիւնը, բայց հէնց նոյն գիտութեան մէջ կար և մոլորութիւն։ Եւ դրանում ես անկարող էի չկասկածել։ Եւ այն ամենը, ինչ որ առաջ ինձ վրայ վանողական տպաւորութիւն էր գործում, այժմ կենդանի կերպով կանգնեց իմ առջև։ Թէպէտ տեսնում էի և այն, որ ամբողջ ժողովրդի մէջ աւելի պակաս չափով է՝ ինձ վանող՝ մոլորութեան խառնուրդը, քան եկեղեցու ներկայացուցիչների մէջ, սակայն այնուամենայնիւ տեսնում էի, որ ժողովրդի հաւատացեալների մէջ էլ մոլորութիւնը խառնուած էր ճշմարտութեան հետ։*

*Բայց ո՞րտեղից առաջ եկաւ մոլորութիւնը և ո՞րտեղից՝ ճշմարտութիւնը։ Ե՛ւ մոլորութիւնը, և՛ ճշմարտութիւնը ամփոփվում են աւանդութեան և, այսպէս կոչուած, սրբազան աւանդութեան և գրութեան մէջ։ Եւ մոլորութիւնը, և՛ ճշմարտութիւնը աւանդուած են եկեղեցու կողմից։*

*Եւ կամայ-ակամայ ես հասայ ուսումնասիրութեան գաղափարին, այդ գրութեան և աւանդութեան ուսումնասիրութեան,—*

մի ուսումնասիրութիւն, որից ես այնքան վախենում էի մինչև այժմ։

Եւ ես դիմեցի հէնց այն աստուածաբանութեան ուսումնասիրութեանը, որը մի ժամանակ ես մի առանձին արհամարհանքով դէն շպրտեցի, որպէս անպէտք բան։ Այն ժամանակ նա ինձ թւում էր անպէտք անհեթեթութիւնների մի շարք, այն ժամանակ ամեն կողմից շրջապատում էին ինձ կեանքի երեւոյթները, որոնք թւում էին պարզ և լի իմաստով. այժմ սակայն ես ուրախ կը լինէի մի կողմ շպրտելու այն, ինչ որ առողջ գլխի մէջ չէ մտնում. սակայն ազատուելու հնար չկար։ Այդ դաւանաբանութեան վրայ հիմնուած է, կամ գոնէ անկապտելի կերպով կապուած է նրա հետ կեանքի իմաստի այն միակ գիտութիւնը, որը բացուեց իմ առջև։ Որքան էլ նա տարօրինակ և վայրենի երևայ իմ ծեր, ամուր խելքի տեսակէտից, դա՝ փրկութեան միակ յոյսն էր։ Պէտք է զգուշութեամբ, ուշադրութեամբ քննել նրան՝ ըմբռնելու համար, և ոչ թէ այնպէս հասկանալ, ինչպէս ես հասկանում եմ գիտութեան հիմունքները. ես այդ չեմ որոնում և չեմ էլ կարող որոնել, ճանաչելով դաւանանքի գիտութեան առանձնայատկութիւնը։ Ես չեմ որոնելու ամեն ինչի բացատրութիւնը։ Ես գիտեմ, որ ամեն ինչի բացատրութիւնը պէտք է ծածկուած լինի անվախճանականութեան մէջ, ինչպէս և ամեն ինչի սկիզբը։ Սակայն ես ուզում եմ հասկանալ այնպէս, որ հասած լինեմ անխուսափելի-անբացատրելիին. ես ուզում եմ, որ այն բոլորը, ինչ որ անբացատրելի է, լինէր այդպէս ոչ այն պատճառով, որ իմ խելքի պահանջները անկանոն էին (նրանք կանոնաւոր են և նրանցից դուրս՝ ես ոչինչ հասկանալ չէի կարող), այլ այն պատճառով, որ ես տեսնում եմ իմ խելքի սահմանները։ Ես ուզում եմ հասկանալ այնպէս, որ իւրաքանչիւր անբացատրելի սկզբունք կանգնէր իմ առջև որպէս նոյն բանականութեան անխուսափելիութիւն, և ոչ թէ որպէս՝ հաւատալու սոսկ պարտականութիւն։

Որ ուսմունքի մէջ կայ ճշմարտութիւն՝ դա ինձ համար անկասկած է. սակայն կասկածից դուրս է և այն, որ նրա մէջ մոլորութիւններ կան, և ես պէտք է գտնեմ թէ ճշմարտութիւնը և թէ մոլորութիւնը և զատեմ մէկը միւսից։ Եւ ահա ես ձեռք եմ զարկում դրան։ Թէ ինչ եմ գտել ես այդ վարդապետութեան մէջ իբրև մոլորութիւն, ինչ եմ գտել իբրև ճշմարտութիւն և ինչ եզրափակումների յանգել, դա կազմում է իմ յետագայ հեղինակութիւնների մասերը, որը եթէ ունի որևէ ար-

*ժէք և կարևոր կը լինի որևէ մէկի համար, ապա, հաւանական է, որ նա երբևիցէ գրուի և մի որևէ տեղում տպագրուի։*

—

*Սա գրուած է իմ ձեռքով սրանից երեք տարի առաջ։ Այդ մասերը պիտի տպագրուեն։*

*Այժմ, երբ վերաքննելով այդ և վերադառնալով մտքի այն ընթացքին և այն զգացմունքներին, որոնք կային իմ մէջ և որոնց ես վերապրել եմ, այս օրերս ես մի երազ տեսայ։ Այդ երազը ինձ համար սեղմ պատկերով արտայայտեց այն ամենը, ինչ որ ես վերապրել եմ ու նկարագրել, ուստի և մտածում եմ թէ՝ այն մարդկանց համար ևս, որոնք ինձ հասկացան, դրա նկարագրութիւնը թարմացուցիչ կը լինի, կը բացատրի ու կը ժողովէ ի մի այն բոլորը, ինչ որ այնպէս երկարօրէն պատմուած է այս էջերի մէջ։ Ահա այդ երազը։*

*Տեսնում եմ ինձ պառկած՝ անկողնու մէջ։ Ո՛չ լաւ եմ զգում, ո՛չ վատ. պառկած եմ կռնակի վրայ։ Սակայն սկսում եմ մտածել այն մասին, թէ լա՞ւ է արդեօք իմ պառկած մնալը. ինչ-որ մի բան, թւում է, անյարմար էր ոտներիս համար,—կարճ էր, անհարթ էր, թէ ինչ, մի խօսքով անյարմար էր. ես շարժում եմ ոտներս և միևնոյն ժամանակ սկսում մտածել՝ ինչպէս և ինչի՞ վրայ եմ ես պառկած, մի բան, որ մինչ այդ ես չէի էլ մտածում։ Դիտելով իմ անկողինը, տեսնում եմ, որ պառկած եմ պարանէ կապիչների հիւսուածքի վրայ՝ ամրացուած մահճակալի կողերին։ Այդօրինակ կապիչներից մէկի վրայ դրուած էին իմ գարշապարները, ծնկներս՝ մի ուրիշի վրայ. ոտներիս անյարմար էր։ Ես չգիտեմ ինչպէս իմանում էի, որ այդ կապիչները կարելի է տեղափոխել։ Եւ ոտների շարժումով ծայրի կապիչը հեռացնում եմ ոտքերիս տակից, և թւում է, թէ այդպէս աւելի հանգիստ կը լինի։ Բայց ես նրան չափազանց հեռու գցեցի. ուզում եմ ոտներով բռնել նրան, սակայն այդ շարժումով իմ ծնկների տակից սահում է և միւս կապիչը, և ոտներս մնում են կախ ընկած։ Ես շարժում եմ, գործում ամբողջ մարմնովս՝ ուղղուելու համար, լիովին համոզուած՝ որ այժմ կը տեղաւորուեմ. սակայն այդ շարժումով սահում են և տեղափոխվում իմ տակին և միւս կապիչները, և ես տեսնում եմ, որ գործը բոլորովին խանգարվում է. իմ մարմնի ամբողջ ներքին մասը ցածրանում, կախ է ընկնում. ոտներս գետնին չեն հասնում։ Ես պահվում եմ միայն կռնակիս վերնամասովը, և այդ միջոցին ինձ համար ոչ միայն անյար-*

մար է դառնում, այլ և սարսափելի։ Այստեղ հէնց ես ինքս ինձ հարց եմ տալիս այն մասին, որը առաջ չէի էլ մտաբերում։ Ես հարցնում եմ ինքս ինձ. ո՞րտեղ եմ ես և ինչի՞ վրայ եմ պառկած։ Եւ սկսում եմ դիտել շուրջս ու ամենից առաջ նայում ներքև, այնտեղ, որտեղ կախուած է իմ մարմինը, որտեղ—ես այդ զգում եմ—նա պիտի ընկնի այս րօպէիս։ Ես նայում եմ ներքև և չեմ հաւատում իմ աչքերին։ Ոչ թէ որոշ բարձրութեան վրայ եմ, նման ամենաբարձր աշտարակի կամ լեռան բարձրութեան, այլ ես գտնվում եմ այնպիսի բարձրութեան վրայ, որպիսին երբէք չէի կարող երևակայել։

Չեմ էլ կարողանում որոշել՝ տեսնո՞ւմ եմ արդեօք որևէ բան այնտեղ ներքևում, այն անյատակ անդունդի մէջ, որի վրայ ես կախ եմ ընկած և դէպի որը ինձ քարշում է։ Սիրտս ճմլվում է, և ես զգում եմ մի սարսափ։ Ներքև նայելը սարսափելի է։ Եթէ ես նայելու լինեմ ներքև, զգում եմ, որ անմիջապէս պիտի սահեմ վերջին կապիչից և մատնուեմ կորստի։ Ես չեմ նայում։ Բայց չնայել՝ աւելի ևս վատ է. որովհետև մտածում եմ այն մասին, թէ ինչ կը լինի այժմ ինձ՝ երբ ես նետուեմ վերջին կապիչից ևս։ Զգում եմ, որ սարսափի ոյժից ես կորցնում եմ իմ վերջին յենակէտը և դանդաղօրէն սահում կռնակով ցած և աւելի ցած։ Մի ակնթարթ ևս՝ և ես կը նետուեմ։ Այն ժամանակ իմ մէջ ծագում է մի միտք. թէ դա ճիշտ բան լինել չէ կարող։ Դա երազ է։ Զարթի՛ր։ Ես փորձում եմ զարթնել, բայց չեմ կարողանում. Ի՞նչ անել, ինչ անել,—հարցնում եմ ինքս ինձ և նայում վերև։ Վերևը նոյնպէս անյատակ է։ Նայում եմ երկնքի այդ անհունութեան և ճգնում մոռանալու ներքևի անյատակութիւնը և, յիրաւի, մոռանում եմ. ներքևի անվախճանականութիւնը վանում է ինձ և սարսափեցնում. վերևի անվախճանականութիւնը քարշում և ամրացնում է ինձ։ Ես միևնոյն կերպ կախ ընկած մնում եմ անդունդի վրայ վերջին՝ տակաւին իմ տակից դուրս չընկած կապիչներին կպած. գիտեմ, որ կախուած եմ, բայց նայում եմ միմիայն վերև, և իմ սարսափը անյայտանում է։ Ինչպէս որ այդ լինում է երազի մէջ, մի ինչ-որ ձայն ասում է. նշմարի՛ր այդ, դա նա է։ Ես նայում եմ շարունակ դէպի խորունկ անվախճանականութիւն, վերև, և զգում եմ, որ ես հանգստանում եմ, յիշում այն ամենը, ինչ որ եղաւ անցաւ, և վերյիշում, թէ ինչպէս պատահեց այդ ամենը, թէ ինչպէս շարժում էի ոտներով, ինչպէս կախ ընկայ, ինչպէս սարսափեցի և ինչպէս փրկուեցի սարսափից նրանով, որ սկսեցի վերև նայել։ Եւ ես հարց եմ տալիս ինձ. ուրեմն

այժմ էլ նոյնկերպ եմ տեսնում։ Եւ ո՛չ այնքան դիտում եմ շուրջս, որքան ամբողջ մարմնովս զգում եմ այն յենակէտը, որից կախ ընկած մնում եմ։ Եւ տեսնում եմ, որ ես արդէն կախուած չեմ և չեմ ընկնում, այլ ուժեղ կառչած մնում։ Հարցնում եմ ինձ, թէ ինչպէս եմ ամրացած, ինչպէս շօշափվում, շուրջս դիտում և տեսնում եմ, որ իմ տակին, մարմնի հէնց մէջ տեղը մի կապիչ կայ, և որ նայելով վերև՝ ես պառկած եմ ամենահիմնաւոր հաւասարակշռութեան վրայ, որը և առաջ էլ մէն-մենակ պահում էր ինձ։ Եւ այստեղ, ինչպէս որ լինում է դա երազի մէջ, իմ առջև պատկերանում է այն մեխանիզմը, որի միջոցով ես պահվում եմ, շատ բնական, հասկանալի և կասկածից դուրս բան է, չնայելով որ այդ մեխանիզմը իրականութեան մէջ ոչ մի իմաստ չունի։ Երազում ես նոյն իսկ զարմանում եմ, թէ ինչպէս է եղել, որ ես այդ չեմ հասկացել առաջ. դուրս է գալիս, որ իմ գլխի կողմը կանգնած է մի սիւն, որի ամրութիւնը կասկածից միանգամայն վեր է, չնայելով որ այդ բարակ սեան համար կանգնելու տեղ չկար։ Ապա այդ սիւնից անց էր կացուած մի կապ-հանգոյց՝ խորամանկօրէն, բայց հասարակ ձևով. և եթէ պառկած ես այդ հանգոյցակապի վրայ մարմնի կենտրոնով և նայում վերև, ապա ընկնելու մասին նոյն իսկ ոչ մի հարց չէ կարող լինել։ Այդ բոլորը ինձ համար պարզ էր, և ես ուրախ էի ու անդորր։ Եւ կարծես, մէկը ինձ ասում է՝ նայի՛ր, չմոռանաս։

Եւ ես զարթնեցի։

ՍՈՒՐԽԱԹԵԱՆ

# ՋԱՀԵԼՆ ՈՒ ԱՀԵԼԸ

Si jeunesse savait,
si altesse pouvait...

**Ջահելը**

*Տեսնում ե՞ս այնտեղ...*
*Հսկայ գագաթը հպարտ, միայնակ,*
*Իշխում է երկար շարքերին լերանց.*
*—Ա՜հ, թռչեմ, գնամ,*
*Կանգնեմ անարատ այն բարձունքի վրայ,*
*Է՛ն աստուածային միայնութեան մէջ*
*Լսեմ խորհրդաւոր ձայնը տարերքի,*
*Արև-Արքային տամ առաջին ողջոյն,*
*Ու փոթորիկի ժամին այս կուրծքս բանամ*
*Դիմաց կայծակի։*

**Ահելը**

*Աւա՜ղ...*
*Կը հասնես դու այն բարձր գագաթին*
*Եւ աչքիդ առաջ կը բացուեն լեռներ,*
*Աւելի բարձր, աւելի շքեղ...*
*Այդպէս կը դիմես միշտ դէպի բարձրը*
*Ու չես յագենայ...*
*Անսահման են, աւա՜ղ, տենչերը մարդու,*
*Բայց նեղ շրջան է նրան սահմանուած.*
*Է՜հ, գերի է, գերի, մարդն այս երկրի...*

**Ջահելը**

*Սիրտս այրվում է նոր զգացումներից.*
*Մի կեանք եմ տենչում այն դալար հովտում,*
*Ուր գարունը յաւերժ փթթում է, ծաղկում*
*Ոչ այս-երկրային ներդաշնակ շնչով.*

Այնտեղ լուսնի շողերին փարուած՝
Սիրոյ դիցուհին անուրջ է սփռում,
Հմայում, տանում դէպի այլ աշխարհ,
Երազի աշխարհ…

**Ահելը**

Յիշում եմ, յիշում, անցած օրերը…
—Տեսել ե՞ս արդեօք վաղորդեան ժամին
Կաթնագոյն մշուշը սարերին գգուած.
Տեսել ե՞ս,
Երբ Կեանք-Արևը ծագում է, ելնում,
Ճերմակ շարքերը ամօ՜թխած քայլով
Ցրվում են անյետ…
Ծաղկում է մարդս բիւր երազներով,
Բայց աշնան պահին՝
Վառ երազները այդ եթերային
Ծանր շղթաներ են մեր հոգու համար։

**Ջահելը**

Ասա ինձ,
Ինչո՞ւ համար են փայլում վառ աստղեր,
Մայր-Բնութիւնը շնչում յաւիտեան,
Ինչո՞ւ են մարդիկ տանջվում ու խնդում
Ու վերջը, ասա՛, դէպ ո՞ւր են գնում…
Ախ, այն ծով-գաղտնիքն ընդգրկել կուզեմ,
Կուզեմ տիրանալ Մեծ-Ճշմարտութեան,
Նրանով զինուել, քարոզել, տանել
Դէպ Լոյս-Ապագան,
Լցնել այն վիհը, որ եղբայրն է բացել
Եղբօրը առաջ,
Նրանից բաժան լինելու համար։

**Ահելը**

Օ՜, հանգիստ, հանգիստ, մի նորոգիր ցաւեր,
Դարաւոր ցաւեր…
Դարեր են անցել մարդկային մտքից,
Եւ նոյնն է մարդը տիեզերքի դիմաց—
Մի անկատար էակ, ծածկուած աչքերով։
Նրանք՝ անվեհեր այն զինուորները
Մեծ-Ճշմարտութեան

Այրուել են, այրուել, իրանց կրակով,
Իսկ կեանքը իր մէջ Լոյս-Կրակն է թաղել,
Եւ տե՛ս...
Նոր խօսքերով հի՛ն կուռքն է պաշտում...
Ու մնում է դարձեալ Մարդ Մարդու դիմաց՝
Հալածուած մի ստրուկ—և ո՛չ աւելի.
Օ՛, մի՛ հաւատար Ներսիդ կրակին,
Ամենից առաջ՝ հէնց քեզ նա կայրի...։

**Ջահելը**

Ողջ բնութիւնը հրաւէր է անում,
Բիւր ձայներով ականջս լցնում.
Քո ձայնը, ծերունի, էլ ես չեմ լսում...
Ապրել, ապրել եմ ուզում...
(Հեռանում է)

**Ծերը**

(Միայնակ)
Տեսնում եմ նորից գարնան ծիլերը
Այս դաժան կեանքում,
Լսում եմ նորից այն թարմ մեղեդին՝
Կեանքի ժխորում.
Այսպէս նորոգվում է տիեզերքն անհուն
Ի՛ն սկզբից սահմանուած կարգով...
Գնա՛, պատանի, ապրիր ու տանջուիր...
Ա՜խ, թէ նորից ես էլ ապրէի...։

Մ. ԱՐԱՋԵԱՆ

# ՍՆՆԴԱԴՈՒԼ

(Յ. Մարխոնի*)

---

Արդէն երեք օր է, որ «քաղաքականները» սննդադուլ են յայտարարել։

Բանտային վերակացուները ներս են բերում կերակուրներով լի կաթսաները և նորից էլ յետ տանում նրանց ձեռք չտրուած։

Իրանց իշխանաւորներին նրանք միշտ էլ զեկուցանում են միևնոյն բանը·

—Նոյն իսկ ձեռք չտուին։

—Ախր ի՞նչ են ասում սննդադուլարարները։

—Շարունակ պահանջում են ազատել Զօրեանին։

Առաւօտեան, կէսօրին և երեկոյեան կրկնվում է միևնոյն պահանջը·

—Ազատել Զօրեանին։

Զօրեանը տասն-հինգ տարեկան, թոքախտաւոր մի գիմնազիստ է, որը հետապնդելու միջոցին մտրակների հարուածներով սաստիկ ծեծուելով՝ այժմ պառկած էր բանտում և գտնվում կեանքի ու մահուան տագնապի մէջ։

Բորբոքուած տենդոտ աչքերը անթարթ յառել է պատուհանին։

Այնտեղ, վանդակների ու փայտէ ծածկերի արանքից երևում է երկնքի նեղլիկ շերտը։

Դէպի մայրն է ուղղուած... Անվերջ կարօտը, զառանցանքից սաստկացած, նրան ներշնչում է խաբուսիկ ցնորքներ, շուրջը թւում է թէ սփռվում է մանուշակների բուրմունքը։ Մա-

---

*) Յ. Մարխոնը լեհական նորագոյն կին գրողներից մէկն է, որ իր «Կեանքը» և «Միրաժներ» երկերով իր մայրենի գրականութեան մէջ ներկայումս աչքի ընկնող թարմ ու նոր երևոյթ է ներկայացնում։ Նրա «Սնընդադուլ» էսքիզը փոխադրում ենք ռուսերէն թարգմանութիւնից։

նուշակների մի ամբողջ մարգագետին։ Մայրը քնքշաբար դնում է նրա ճակատի վրայ իր փափուկ, սպիտակ ձեռքերը... Մայրը... Նա վեր թռաւ քնից. դարձեալ նոյն բանտն է, կոշտ տախտերը և մռայլ բանտախուցը։

Չնայելով քարէ պատերին, հիւանդ պատանու ընկերների սիրտն է ինչ-որ մի տեղից՝ դրսից սողալով ներս թափանցում յուսահատ թախիծը, որ շղարշում է նրանց մանկական հոգիները մշուշի նման։

—Ազատել Զօրեանին։

Երեկոյ է։ Հիւծուած մարմինները գլխիվայր ընկնում են իրանց անկողինների վրայ։ Ամբողջ երեք օր շարունակ նրանց բերանը ոչ հացի պատառ է մտել, ոչ էլ մի կաթիլ ջուր։

Բոլորի աչքերն էլ վառվում են մի ինչ-որ մռայլ կրակով։

Բանտարկեալների՝ ծարաւից չորացած կոկորդները դժուարութեամբ են կուլ տալիս թուքն անգամ։ Բայց այդ թուքն էլ այլ ևս չէ բաւականացնում։ Արիւնը գլխներումն է տալիս և պարթեցնում վայրենի, մրրկածուփ մտածմունքներ։ «Մենաւորներից» ո՛րը նստել է անշարժ, պատին յենուած, սեղմելով գլուխը ձեռքերի մէջ, ո՛րը քայլում է անկիւնից անկիւն ջղայնօրէն ծիծաղելով, ո՛րը յուսահատութեամբ հեկեկում է, ո՛րն էլ՝ մատների ծայրի վրայ կանգնած՝ պատուհանի մօտ՝ ագահաբար որսում է երեկոյեան քամու շունչը իր բորբոքուած գլխով։

Վերակացուները հանդարտ յետ են քաշում նիգերը և ներս բերում ընթրիքը։

—Տա՛ր, տա՛ր, տա՛ր,—լսվում է նոյն բօպէին հարիւրաձայն աղաղակը։

—Բայց, պարոններ, թոյլ տուէք...

—Տա՛ր, տա՛ր։

Բանտարկեալները փակում են իրանց աչքերը և քթները խցում, որպէս զի չգրգռուեն սնունդի հոտից։ Նրանցից մէկը՝ կատաղած՝ վայրենաբար ձեռքը ձգում է վերակացուի օձիքից, միւսը՝ յարձակվում վերակացուի վրայ սեղմուած բռունցքներով։

Վերակացուները սարսափահար շտապով անյայտանում են։

—Ազատել Զօրեանին։ Ազատել Զօրեանին,—դղրդում է ամբողջ բանտը։

Գիշեր է... Անխօս, մռայլ բանտային գիշեր։

Մի քանիսը քնած են։ Ուրիշները տանջվում են ծանր, շուտ-շուտ ընդհատուող կիսաքնի մէջ։ Մթութեան մէջ արձագանքում են հառաչանքներն ու հեծեծանքները...

Առաւօտը մի փոքր թարմացնում է ամենքին։

Գրգռուած սննդադուլարարները գոռգոռում են և սկսում թրխկ-թրխկացնելը։

—Կը դիմանանք մինչև վերջ։

Բայց կէսօրին, երբ տաքը սաստկանում է, նրանք նորից թուլացած ընկնում են տախտերի վրայ, պառկում են անշարժ և շնչում դժուարութեամբ։

Վրայ է հասնում երեկոն, լի խօլական ցնորքներով։ Գիշերային խաւարի մէջ շրշում են անաղմուկ թևերը ինչ-որ կօշմարային տեսիլների, որոնք փաթաթվում են մարմնին այնպէս, ինչպէս որ օձը փաթաթուելով խեղդում է իր որսին։ Մատները, սառոյն՝ ինչպէս չղջիկների թաղանթները, կպչում են քրտնած ճակատներին։ Ինչ-որ անյայտ ձայներ են լսվում։

Դարձեալ վերակացուները բերում են և յետ տանում սընունդը։

Դարձեալ որոտում է միևնոյն համերաշխ, անդրդուելի աղաղակը.

—Ազատել Զօրեանին։

Դեղին, ցամաքած կմախքները վառվռուն աչքերով օրօրվում են գժերի նման։

Ամենքի ջղերը ձգուած են լարերի պէս և չեն դիմանում ամենափոքր շշիւնին անգամ։

Ծանձերի տզզոցը այդ տարաբախտներին կատաղութեան է հասցնում։ Նրանք գլուխները խփում են պատերին։ Սկսում են յանկարծակի հեկեկալ։

Ամենաաննշան առիթից բռնկվում է յուսահատ, հարիւրաձայն արձագանքով կրկնուող հեծեծանքը։

—Ազատել Զօրեանին։

Պապակուած, քաղցածութիւնից դողացող շրթունքները կարողանում են կրկնել միայն այդ խօսքերը։ Դա նրանց օրհներգն է, նրանց աղօթքը, գերմարդկային տանջանքի աղաղակը։ Կսկիծով, յուսահատօրէն, կատաղաբար հնչում է առաւօտեան, ճաշին և երեկոյեան.

—Ազատել Զօրեանին։

Ներս է մտնում բանտապետը, նրանց կեանքի ու մահուան տնօրէնը։

—Պարոններ, խելքի եկէք... Ես խօմ չեմ կարող առանց դատարանի...

—Ազատել Զօրեանին։

—Թէ լաւ, ես կը քննեմ գործը և, եթէ հնարաւոր լինի...

—Ազատել Զօրեանին։ Ազատել Զօրեանին,—մռնչում է

բանտը այնպէս, որ աղաղակից թնդում ու ցնցվում են պատերը։

Բանտապետին վախեցնում են այդ բորբոքուած աչքերը, ատելութիւն շնչող այդ բերանները, այդ սոված, գրգռուած մարդկային մարմինները, թերևս գուցէ և այն հզօր ոգին, որ ժայթքում է այդ կիսադիակներից։

Նա շտապով յետ է նահանջում։

Բանդարկեալները պառկած են, համարեա, մահամերձ, անկարող՝ մատերն իսկ շարժելու։

Մեքենայաբար հայեացքները յառած առաստաղին, անձնատուր են եղել ճակատագրի կամքին։

Կորչել, ուրեմն կորչել։

Արտասովոր լռութիւնը ստիպեց վերակացուներին ականջները սրել։

—Մի՞թէ նրանք արդէն...

Վերակացուները աչքները ուղղում են դէպի բանտախցերը, նախազգուշութեան համար ձեռքները դնելով նիգերի վրայ։

—Պարոններ...

—Ազատել Զօրեանին.—լսվում է թոյլ, հեկեկանքի նմանող մի հառաչանք։

—Բանտապետը խոստանում է ազնիւ խօսքով...

—Ազատել Զօրեանին...

—... Որ Զօրեանը կազատուի...

—Թող նրան ցոյց տան մեզ։

—Մենք ուզում ենք տեսնել, երբ որ նա բանտից դուրս կը գայ։

Վերակացուները երբեմն չքանում են, նորից յայտնվում, խաղալով բանտարկեալների հետ այնպէս, ինչպէս կատուն մկան հետ։

Տառապող կրծքերը արձակում են երկարատև հառաչանք- մեռնող նահատակների վերջին գանգատն է։

—Ազատել Զօրեանին...

—Բայց, պարոններ,—գաղտնի կերպով շշնջում է վերակացուներից մէկը.—անկարելի է ցոյց տալ Զօրեանին... Զօրեանը... երէկ մեռաւ։

Լ. ԴԱՆԻԷԼԵԱՆ

# ՕՍՄԱՆԵԱՆ ՀԱՅԵՐԻ ԱԶԳԱՅԻՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ*)

## (1860—1910)

---

### Բ. ՄԱՍՆ

#### ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

*Ռուսական յաղթութիւնն և Կ. Պօլսի հայերի ձգտումը դէպի Ռուսաստան.—Հայկական մասնաւոր ժողով 1877 հոկտ. 21-ին.—Հայոց* pia desideria*-ն.—Ներսէս պատրիարքի պահպանողականութիւնը.—Նոր քաղաքականութեան պահանջ.—Խրիմեան Վարժապետեանի դէմ.—Եպիսկոպոսների գաղտնի խորհուրդը.—Վարժապետեանի՝ Նոր քաղաքականութեան յարելը.—Թիւրք կառավարութիւնն՝ ակամայ պատճառ քաղաքական հայկական խնդրի ծագման.—Զինադադարի պայմանները.—Հայոց յուսաբեկութիւնն և ձեռք առած եռանդուն միջոցները.—Հայ պատուիրակների տեսակցութիւնն Ադրիանուպօլսում մեծ իշխանի և Իգնատիեվի հետ.—Կ. Պօլսի հայերի ընդհանուր ոգևորութիւնն և մեծ յոյսերը.—Կիլիկիա.—Հայ եպիսկոպոսների աղերսագիրներն Ալէքսանդր Բ. կայսեր և իշխան Գորչակօվին.—Իգմիրլեանի դերը հայկական խնդրում։*

*Ռուս-Թիւրքական պատերազմն իր ամենատաք շրջանի մէջ էր։ Փոքր-Ասիայում Լօռիս-Մելիքեանի բանակը վերջնական հարուած էր հասցրել Մուխթար փաշայի Ալաջա լեռան լանջերի վրայ և պատրաստւում էր Կարսը պաշարել։ Եւրոպական Թիւրքիայում ռուսական բանակը ռումինական բանակի օգնութեամբ պաշարել էր Պլէվնան, որի մօտալուտ անկումն օրէ օր սպասւում էր։ Մինչև իսկ յանդուգն մի ռուս զօրախումբ աջողել էր Բալկաններն անցնել և դէպի Ֆիլիպպօպօլի դիմել։*

---

**) «Արօր» 1910 թ. № № 1, 2, 3, 4, 5, 6—7, 8 — 9 — 10, 12 և 1911 թ. № № 1, 2—3, 4.*

Ռուսական բանակի վերջնական յաղթութիւնը՝ գոնէ քրիստոնեաների համար՝ այլ ևս տարակոյսի տակ չէր։ Եւ այս հաւանական վախճանից առաջ գալիք անհրաժեշտ բարեփոխութիւնները լուրջ մտածութեան առարկայ էին Կ. Պոլսում։ Հայերը նոյնպէս չէին կասկածում, թէ շուտով հիւսիսային արծիւը՝ պարտըւած և ընկճուած մահիկին իր պայմանները պիտի առաջարկէր հաշտութիւն կնքելու համար և թէ առաջիկայ խաղաղութիւնը Թիւրքիայի քրիստոնեաներին քաղաքական ազատութիւն պիտի բերէր։ Այսպիսի պարագաներում շատ բնական էր, որ Կ. Պոլսի հայերն իրանց աչքերը յառէին յաղթական Ռուսաստանին, որի բարեհայեցողութիւնից էր կախուած Թիւրքիայի ապագան։ Եւս աւելի, որ հայերն օրինաւոր պատճառներ ունէին թիւրքական ռէժիմից դժգոհ լինելու։ Գաւառական հարստահարութիւնների բարձման և հայերի կեանքի, պատուի և գոյքի ապահովման մասին Թիւրք կառավարութեան ներկայացուած կրկին տեղեկագիրները (1872 և 1876) մնացել էին անհետևանք և ապարդիւն։ Ժողովուրդը—գոնէ մեծագոյն մասը—կորցրել էր իր հաւատը դէպի իր կառավարութիւնը, թէև նոյն իսկ սուլթան Համիդ և սրա խօսքերի վրայ հիմնուելով Ներսէս պատրիարք քանիցս կրկնել էին, թէ պատերազմից յետոյ հայերը «շատ լաւ օրեր պիտի տեսնէին»։ Միևնոյն ժամանակ բոլորին յայտնի էր, որ Ռուսաստան իր սուրը մերկացրել էր թիւրքահպատակ քրիստոնեաներին ազատելու համար։ Եւ որովհետև մօտ էր Ռուսաստանի յաղթութիւնն, ուրեմն այս հաշուով մօտ պէտք է լինէր և այս ազատութիւնը. պէտք էր միայն ոչ մի ջանք չխնայել, որ հայերն անմասն չմնային այն բարիքից, որ ռուսական յաղթութիւնը պիտի շնորհէր քրիստոնեաներին, որոնց ազատութեան անունով սկսուած էր պատերազմը։ Չէ՞ որ հայերն ևս քրիստոնեայ էին. չէ՞ որ հայերն ևս Թիւրքիայում նոյնչափ, եթէ ոչ աւելի, զրկանք և հարստահարութիւններ էին կրել և կրում էին՝ որչափ բուլգարները, բօսնեակներն և այլն, որոնց դատը պաշտպանվում էր յատկապէս Ռուսաստանի կողմից զինու զօրութեամբ. ինչու հայերը պիտի լռէին, ինչպէս լռել էին մինչև հիմա, և չպիտի պահանջէին, որ գոնէ վճռական րոպէին, երբ Թիւրքիայի բախտը պիտի որոշուէր, հայի և Հայաստանի վիճակի վրայ ևս համանման ուշադրութիւն դարձուէր։ Ահա այս նկատումներով «Ազգային Ժողովոյ մեծագոյն և ուղղափառ մասը»*) 1877 հոկտեմբեր 21-ին,

*) «Տեղեկագիր արմաշեցի Ներսէս վ. Տէր-Բարթուղեանի առ Գէորգ Դ. կաթողիկոս»։ Էջմիածին, 1878 յունուար 14. (Կաթող. Դիւան)

ուրբաթ օր, Ղալաթիոյ կենտրոնական Վարժարանում գումարուելով՝ մասնաւոր խորհրդակցութիւն ունեցաւ։ Ազգային երեսփոխաններն այս ոչ-պաշտօնական ժողովում որոշեցին հայկական դատը ներկայացնել յաղթական Ռուսաստանի բարեհայեցողութեան։ Այս նպատակով նրանք մշակեցին իրանց pia desideria-ն, այն «չափաւոր բաղձանքները» կամ պահանջներն, որ հարկաւոր էին համարում իրանք Հայաստանի կամ Թիւրքիայի հայութեան ապագայի համար։ Բայց ո՞վ պիտի լինէր միջնորդը։ —Ի հարկէ Էջմիածնի ընդհանրական կաթողիկոսն, որ թէ իբրև Թիւրքիայի հայոց վերին հոգևոր գլուխն և թէ իբրև ռուսահպատակ՝ միակ յարմարն էր համարվում այս կենսական հարցը ռուսաց կայսեր ներկայացնելու։ Ուստի ժողովականներն որոշեցին մի յատուկ հոգևորական պատգամաւոր ուղարկել Էջմիածին մանրամասն ծրագրով և հրահանգներով, բայց երբ իմացուեց, թէ Ներսէս վարդապետ Տէր-Բարթուղեան արդէն մեկնում է այն կողմն, այդ պաշտօնը յանձնեցին նրան։ «Խնդրեցի յերեսփոխան տեարց,—ասում է այս արմաշեցի պատգամաւոր վարդապետն իր տեղեկագրում,—որ պաշտօնս վաւերացնող թղթերն յանձնուին ինձ յանուն Աստուածարեալ Վեհափառութեանդ, բայց թղթերն թերևս ի ճանապարհին վտանգի գալէն կասկածելով չհամարձակեցան տալ. սակայն ամենքեան յոտին կալով՝ քանիցս առաջարկութիւնները կրկնելէն վերջը քահանայական կարգիս վրայ ալ երդումն պահանջեցին, որ ամեն ինչ բառ առ բառ խօսիմ յանուն Վեհիդ. Նոքա թէև բանիւ բերանոյ ինձ պատուիրեցին, բայց կասկածելով որ անկարող լինիմ ըստ արժանւոյն նոցա միտքը մի առ մի բացատրել, որոշեցի գրովս խօսիլ, որն որ կարէ և Վեհափառութիւն Ձեր պատգամաւորութեանս իրականութեան իբր երաշխաւորութիւն պահել ապագային ծառայիդ հաւատարմութիւնն ստուգելու համար»։ Մի մեծ արգելք կար սակայն կաթողիկոսի կողմից, որ էր այս վերջինի հակառուս քաղաքականութիւնն. և ահա դրա դէմ է, որ ոգորում են այնուհետև թէ այս առաջին պատգամաւորը, թէ նրանից վերջ եկող Մատթէոս եպ. Իզմիրլեան, թէ Ներսէս պատրիարք և թէ իրան՝ Գէորգ կաթողիկոսին բարեկամ պօլսեցի յայտնի անձինք։ Այս առաջին դիմումի ժամանակ երեսփոխանները նախ արդարացնում են Գէորգի մինչև այն ժամանակ ունեցած վարմունքն և ապա աշխատում են համոզել, որ նա փոխէ այժմ իր դիրքը։ «Գոնէ արդի քաղաքականութեան այս վտանգաւոր ժամանակին կը խնդրուի Նորին Վեհափառութեան՝ փոխել իր մինչև ցարդ բռնած քաղաքականութիւնը...»։ Այս ա-

ռաջարանից յետոյ «Ազգային Ժողովոյ մեծագոյն և ուղղափառ մասը», միշտ ըստ Տէր-Բարթուղեանի տեղեկագրի, խնդրում է կաթողիկոսից, որ սա կայսեր ներկայացնէ Հայաստանի ապագայի նկատմամբ հետևեալ խնդիրները.

«ա) Կամ մինչև Եփրատի սահմանն, որ է Մեծ Հայքն, կրկին Տաճկաց չվերադարձնել, այլ իւր կայսերական իշխանութեան մէկ մասն համարել, միացնելով Արարատեան նահանգին հետ...*)։

«բ) Կամ եթէ, ինչպէս կը լսենք, իրօք խօսք տուած է երկիր չգրաւելու, ինչ շնորհներ որ պիտի լինին Բուլգարստանի և ինչ արտօնութիւններ, որ պէտի տրուին բուլգար ժողովրդոյն, նոյնը շնորհուի—ըստ բարեհաճ կամաց Նորին Կայսերական Մեծութեան—նաև Հայաստանի այս մասին և հայ ժողովրդեան, ընդ պաշտպանութեամբ և երաշխաւորութեամբ կայսերն ամենայն ռուսաց։

«գ) Եւ կամ եթէ կրկին այն երկիրներն եա պիտի տրուին Օսմանեան պետութեան, նիւթական երաշխաւորութիւն պահանջուի երկրին բարեկարգութեան և հպատակաց հաւասարութեան համար, ու այս երաշխաւորութիւնը լինի ռուսական զօրաց Հայաստանէն չելնելով և պահանջուելիք բարեկարգութիւններն ալ մեր ազգին շահաւոր լինելու պայմանաւ. որ է՝

«1. Ոստիկանութիւնը մեծ մասամբ հայերէն բաղկանայ,

«2. Հայք ալ կանոնաւոր զինուորական կրթութիւն ստանան,

«3. Քիւրդերն ու չերքեզներն կամ բոլորովին Հայաստանէն հեռանան՝ կամ լեռներէն իջնելով քաղաքներու և գիւղերու մէջ կանոնաւոր բնակութիւն հաստատեն, և անոնցմէ ոստիկան չառնուի ժամանակ մը։

«4. Հայք ալ քաղաքային պաշտօններու մէջ անխտիր գործածուին, մանաւանդ թէ այս երկիրներուն կուսակալներն և գաւառապետներն հայ լինին։

«Եւ այս ամեն բարենորոգումները լինելէ յետոյ կայսերական զօրքն ելնէ երկրին մէջէն։

*) Այս Ա. կէտի տակ, փակագծի մէջ, աւելացուած է հետևեալը. «Այս առաջարկութեան ի սրտէ փափագող չենք, սակայն եթէ թոյլ տրուի Ռուսիոյ՝ այդ երկիրները գրաւելոյ, ոչինչ չենք կարող ընել. այլ եթէ կարելի է՝ կը խնդրենք Նորին Վեհափառութենէն, որ հաւատարիմ հոգևորականներու ձեռօք ջանացուի, որ սոյն քաղաքներն ու գիւղերն իրենց ազգային ներքին վարչական ձևը չփոխեն, և կայսեր յիշատակութիւնը «Որ օրհնես զայնոսիկի» մէջ յիշատակել սկսին. Թերևս այդ կերպով սովորութիւն կը դառնայ ազգային, բոլոր ռուսաց իշխանութեան մէջ գտնուած հայոց եկեղեցիներուն համար ալ»։

«Երկրորդ

«Նորին Վեհափառութիւնը՝ բանիբուն և լեզուագէտ մի բարձրաստիճան եկեղեցական իւր կողմանէ փոխանորդ ղրկէ՝ քիչ ժամանակէն գումարուելիք դեսպանաժողովին, որոյ միջոցաւ նոյնպէս իւր առաջարկութիւններն եւրոպական գումարման ներկայացնէ իբրև հայոց ազգին Ընդհանական Հայրապետն և Գլուխն և Տէրը։ Գնացող պատգամաւորը վերոյիշեալ առաջարկութիւններէն Բ. և Գ. թղթով ներկայացնէ դեսպանաժողովին, որոյ մէջ՝ «ըստ բարեհաճ կամաց և ընդ պաշտպանութեամբ և երաշխաւորութեամբ կայսեր և այլն» խօսքերու փոխարէն նշանակուին՝ «ըստ բարեհաճ կամաց եւրոպական պետութեանց, և ընդ պաշտպանութեամբ և երաշխաւորութեամբ եւրոպական դաշնակից մեծ պետութեանց»։

«Գնացող պատգամաւորն իրաւունք ունենայ նաև մեծ տէրութեանց խորհրդարանաց հետն ալ բանակցելու յանուն Նորին Վեհափառութեան Ընդհանրական Հայրապետին, մանաւանդ Անգղիոյ, Գաղղիոյ և Պրուսիոյ տէրութեանց հետ, որոնք արդէն ձեռք առնուած են Կ. Պօլսոյ Ազգային Ժողովոյ կողմանէ, բայց ոչ պաշտօնական ձևով։ Խնդիրն ի պաշտօնէ դեսպանաժողովին ներկայացնելու մեծ գործը Նորին Ազգասէր Վեհափառութեան կը թողուն...»։

Ուշադրութեան արժանի է, որ «Ազգային Ժողովոյ մեծագոյն և ուղղամիտ մասի», ինչպէս ասում է ինք, պատգամաւորը տեղեկագրում ոչ մի տեղ չի յիշում Ներսէս պատրիարքի անունը։ Վարժապետեան այն ժամանակ դեռ շարունակում էր հետևել այն քաղաքականութեան, թէ պէտք չէր գործել Թիւրքիայի դէմ, օտար կամ եւրոպական միջամտութիւն խնդրելով, այլ թիւրք կառավարութեան միջոցով ձեռք բերել այն բոլոր բարենորոգումներն, որոնք անհրաժեշտ էին Հայաստանին։ Եւ որովհետև առհասարակ թիւրք կառավարութեան վրայ այլ ևս նախկին վստահութիւնը չկար, ուստի պատրիարքը շատ հեռու էր ժողովրդի ընդհանուր համակրութիւնը վայելելուց*)։

*) Ճիշտ այն ժամանակ, այն է 1877 հոկտ., Կ. Պօլսից գրում էին Թիֆլիս, «Մշակին». «Խեղճ Խրիմեան Հայրիկ. հայրենիքի այս անձնուէր կենդանի նահատակը բանաստեղծութիւններ գրելով և տպել տալով և Հայաստանի վրայ լալով, ողբալով ժամանակ կանցունէ։ Գալով պատրիարք Ներսէս սրբազանին, սա ալ ազգի վէրքերն իր փառասիրութիւնով և անձնասիրութիւնով կուզէ դարմանել, որով թէ կը մխիթարուի և թէ կը փառաւորուի, և «ազգասէր» ածականն ալ «քաղաքագէտ» ածականին հետ կընդունի իր վրայ։ Վա՜յ քեզ, խեղճ հայ ազգ»։ («Մշակ» 1877 № 80)։

Ներսէսի այս պահպանողական ընթերցանքին դէմ էր նաև բարձրաստիճան եկեղեցականների մեծ մասն, որ գտնում էր, թէ հասել էր ժամանակը մինչև հիմա գործադրուող այդ քաղաքականութիւնը փոխելու։ Փոխանակ թիւրք կառավարութեան շարունակ կրկնած և երբէք չկատարած կամ կատարել չկամեցած խոստումներին հաւատալով այս կացութեան համակերպելու, անհրաժեշտ էր հիմա, դատում էին շատերը, թիւրքահպատակ միւս քրիստոնեաների օրինակին հետևել, նրանց նման՝ օտար տէրութիւններին դիմել և նրանցից սպասել ազգի ցաւերի դարմանը, Հայաստանի վիճակի բարուոքումը։ Եւ այս դիմումն ևս աւելի և անպատճառ պէտք էր այժմ անել, որպէս զի նրանց, միւս քրիստոնէաբնակ նահանգներին վարչական ինքնօրինութիւն տրուած ժամանակ, ինչպէս արդէն որոշուած էր համարվում, նոյն շնորհին մասնակից լինէր նաև Հայաստան։ Այսպէս էր ընդհանրապէս տիրող կարծիքը Կ. Պոլսում։

Բայց այսպիսի մի պաշտօնական դիմում՝ ազգի պաշտօնապէս ճանաչուած Գլխի միջոցով միայն կարելի էր անել։ Ըստ Սահմանադրութեան՝ ազգային գործերի ղեկը գտնվում էր պատրիարքի ձեռքին, որ թէ Ազգային Վարչութեան պետն էր և թէ Ազգ. Երեսփ. Ժողովի նախագահը։ Պէտք էր, ուրեմն, Ներսէս Վարժապետեանին հակեցնել վերև գծուած նոր քաղաքականութեան։ Ո՞վ ունէր բաւականաչափ հեղինակութիւն այս քայլն անելու։ Եւ այդ փափուկ րոպէին ասպարէզ իջաւ Խրիմեան Հայրիկ։

Խրիմեան՝ պատրիարքութիւնից հրաժարուելուց յետոյ ապրում էր Կ. Պոլսում, Բոսֆորի ասիական ափի մի փոքր գիւղում, Կուզգունջուքում։ Վարչական պաշտօններից հեռու՝ նա լուռ ու մունջ հետևում էր գլխաւորապէս գաւառական կեանքին և պարապվում էր գրականութեամբ։ 1876-ի և 1877-ի մի շարք ծանր ազգային աղէտները դարձեալ արձակեցին Վասպուրականի արծուի թևերն, և նա ուժգնապէս իր ձայնն սկսեց լսելի դարձնել նախ Վանի հրդեհի և ապա Ալաշկերտի և Բայազիդի կոտորածների առթիւ։ Ոչ,—ասում էր նա հայ ժողովրդին,—բաւական եղաւ այսպէս ոչխարի նման համակերպուելը. անհրաժեշտ էր վերջապէս ինքնապաշտպանութեան համար զինուելը*)։

---

*) «Հայգոյժի» մէջ նա ասում էր հայ ժողովրդի հասցէին. «Յուշ յուշ ով կոտորուած գառներ, ով հայոց ողջ ու մնացորդ որդիք, որ դեռ պիտի կոտորուիք, դեռ պիտի մորթուիք, քանի որ անզէն, անեղջիւր կապ-

Եւ երբ սուլթան Համիդ Վարժապետեանին իր բարձր գոհունակութիւնն էր յայտնում հայոց՝ թիւրք բանակին մատուցած ծառայութիւնների համար և նրա կուրծքը շքանշանով զարդարում, Խրիմեան դիմեց նրան, Վարժապետեանին, և հարցրեց՝ «իսկ ի՞նչ միջոցներ են ձեռք առնուած, որ հայերի կոտորածը չկրկնուի»։ Նա պահանջում էր, որ այս ջարդի մանրամասն տեղեկագիրը կազմուի և հրատարակուի ի տեղեկութիւն ընդհ. ազգի և ի գիտութիւն Եւրոպայի։ Խրիմեանի այս քայլը մեկնուեց իբրև կառավարութեան դէմ ըմբոստութիւն և առիթ տուեց զզուելի յարձակման նրա դէմ, բայց թէ հոգևորականների և թէ ժողովրդի մեծամասնութիւնն արժանաւոր պատասխան տուին նրա հեղինակին*)։

Խրիմեան՝ մի օր, նոյեմբերի մէջ (1877), իր Կուզգունջուքի բնակարանը հրաւիրեց բոլոր եպիսկոպոսներին և երկարօրէն խօսելով Ներսէսի բռնած դիրքի վնասակարութեան և իր մտադրած քաղաքականութեան օգտակարութեան մասին՝ առաջարկեց տապալել Վարժապետեանին և նրա տեղ, պատրիարքական աթոռի վրայ, ազգային քաղաքականութեան նոր ուղղութիւն տալու ընդունակ մի այլ յարմար անձ բազմեցնել։ Մատթէոս եպ. Իզմիրլեան առաջարկում է՝ նախ քան այս ծայրայեղ միջոցին դիմելը՝ տեսնուել Ներսէսի հետ և համոզել նրան, որ փոխէ իր ընթացքը։ Իզմիրլեանի այս առաջարկութիւնն ընդունվում է և ըստ այնմ եպիսկոպոսների մի պատգամաւորութիւն Խրիմեանի առաջնորդութեամբ գնում է Ներսէսի մօտ։ Պատգամաւորութիւնը լրջօրէն քննելով իրերի ընդհանուր կացութիւնը բացատրում է, թէ քաղաքական նոր հանգամանքները պահանջում են, որ Ներսէս փոխէ իր մինչև այն օր բռնած վարմունքն և քաղաքականութիւնը։ Ներսէս համաձայնվում է Խրիմեանի և իր ընկերների յառաջ բերած պատճառաբանութիւնների հետ և յայտնում է, թէ ուր որ ազգի ճշմարիտ շա-

---

րիք։ Դուք մարդ էք. ձեռք և բազուկ ունիք. միթէ անզգայացած, մեռե՞լ է ձեր սրտմտութեան հոգին. մի՞թէ կը հաւատաք, որ իշխանութեան աչքը հասնի մինչև հայոց ամայի լեռներ ու դաշտեր և ձեզ պահապան լինի»։

*) Այն միջոցին (1877 թ. օգոստոս) Կ. Պօլսի «Լրագիր» թերթն՝ «Ո՞վ է մատնիչը» վերնագրով մի յօդուած հրատարակեց, որի մէջ իբր խռովայոյզ և կառավարութեան դէմ դաւադիր էր ներկայացնում Խրիմեանին, Խորէն Նար-Բէյին և նրանց համակարծիք ազգային երեսփոխաններին և այլ գործիչներին։ Այս յանդուգն ամբաստանութիւնը մեծ վրդովմունք յառաջ բերաւ Կ. Պօլսում։ «Ազգն ամբողջ այնչափ զզուեցաւ «Լրագիրէն»,—գրում էին Կ. Պօլսից,- որ ալ ոչ ոք կը գնէր այդ թերթը, որի խմբագրապետն էր Նիկողոս Թիւլպէնտճեան»։ («Մշակ» 1877 թ. № 87)։

ները են, ինքը միշտ այնտեղ է։ Միայն նա պահանջում է, որ եպիսկոպոսներն իր հետ գործակից և համերաշխ լինեն։ Ահա այս կերպով՝ Խրիմեանի ճնշման տակ՝ Ներսէս փոխեց իր ընթացքն, ստանձնեց իրան թելադրուած նոր քաղաքականութիւնըն և այնուհետև եռանդով ղեկավարեց «Հայկական Խնդիրը»*)։

Այն միջոցին քաղաքական հանգամանքներն էլ այնպէս էին դասաւորուել, որ մասամբ նոյն իսկ Թիւրք կառավարութիւնն էր մղում տուողն այս խնդրի յարուցման։ Ինչպէս ուրիշ առթիւ էլ ասել ենք, Թիւրք կառավարութիւնը համարեա ճնշում էր գործ դրել Ներսէսի վրայ, որ սա եւրոպական տէրութիւններին դիմէ և բողոքէ սլաւ ցեղերի համար առանձնաշնորհեալ կացութիւն ստեղծելուն դէմ և նոյնպիսի կացութիւն պահանջէ նաև հայերի համար։ Ներսէս՝ Սավֆէթ փաշայի ներշնչած այս քաղաքականութիւնն ազգային շահերին համաձայն գտնելով՝ ըստ այնմ վարուեց և մինչև իսկ այնքան յառաջ գնաց, որ նոյն իսկ Ռուսաստանի դէմ յարձակողական լեզու սկսեց գործածել եւրոպական դեսպանների հետ։ Այս դիմումներն և բողոքներն այն արդիւնքն ունեցան, որ թէ Ներսէս և թէ ժամանակի այլ ազգային յայտնի անձնաւորութիւններ՝ դրա շնորհիւ յարաբերութիւններ պահպանեցին եւրոպական դիւանագէտների հետ, զուտ քաղաքական հարցերի վերաբերեալ։ Այս յարաբերութիւնները նախ կատարվում էին ի հաշիւ Թիւրք կառավարութեան. և երբ, հանգամանքները փոխուելով, ազգային նոր քաղաքականութեան պահանջն երևան եկաւ, Ներսէս և իր խորհրդակիցները նոյն յարաբերութիւնները շարունակեցին մերթ գաղտնի և մերթ յայտնի կերպով, այլ և իրանց հաշուին, այն է՝ իբրաւես Հայաստանի ինքնավարութիւնը պահանջելու կամ խնդրելու համար՝ եւրոպական պետութիւններից ընդհանրապէս և ռուսականից մասնաւորապէս։

Ռուս-թիւրքական պատերազմը մօտենում էր իր վախճանին։ 1878-ի սկիզբները Թիւրքիան՝ զգալով իր յուսահատական վիճակը՝ ճարպիկ դիւանագիտական շրջաբերականով աշխատեց համոզել եւրոպական պետութիւններին, որ միջամտեն իր և Ռուսաստանի մէջ հաշտութեան բանակցութիւն սկսելու համար։ Բայց միմիայն Անգլիան յանձն առաւ գէթ բարոյական աջակցութիւն ցոյց տալ և առաջարկեց, որ զինադադար լինի։ Բայց Ռուսաստանն, օգտուելով իր գերակշռող դիրքից, ձգձգեց այս

*) Այս դէպքն անձամբ պատմած է մեզ հանգուցեալ Իզմիրլեան կաթողիկոս, Հայկական Խնդրի վերաբերեալ մի քանի այլ մանրամասնութիւնների հետ։

առաջարկութիւնը, մինչև որ Եւրոպական Թիւրքիայի մեծագոյն մասն իր ձեռքն անցաւ, և ապա յայտնեց, թէ նա կընդունէր միայն այնպիսի զինադադար, որ իր մէջ պարունակէր նաև հաշտութեան գլխաւոր պայմանները։ Բ. Դուռնստիպուած եղաւ զիջել և իր լիազօրներն ուղարկեց ռուսաց բանակի գլխաւոր հրամանատար մեծ իշխան Նիկօլայ Նիկօլայեվիչի մօտ այս պայմաններն իմանալու։ Իսկ մեծ իշխանը մինչև Ադրիանուպօլիսը չգրաւեց՝ ոչ մի բանակցութեան մէջ չմտաւ նրանց հետ։

Յունուարի 15/27-ին մեծ իշխանն և թիւրք լիազօրներն, որոնք մի շաբաթից ի վեր հետևում էին նրան, հասան Ադրիանուպօլիս և յունուարի 19/31-ին ստորագրեցին զինադադարի դաշնագիրն, որ իր մէջ պարունակում էր հաշտութեան հիմնական պայմանները։ Ըստ այս պայմանագրի՝ Թիւրքահպատակ սլաւներին քաղաքական ազատութիւն էր տրվում (?) ... 

Կազմըվում էր մի ընդարձակ բուլգարական ազգային քրիստոնեայ իշխանապետութիւն։ Օսմանեան բանակը բոլորովին դուրս էր գցվում Բուլգարիայից։ Բօսնիացիներին, Հէրցէգօվինացիներին և Թիւրքիայի եւրոպական մասի միւս քրիստոնեայ հըպատակներին տեղական ինքնավարութիւն էր շնորհվում, բաւականաչափ երաշխաւորութիւններով։ Իսկ Փոքր-Ասիայի քրիստոնեաների և առանձնապէս հայերի մասին, որոնք առաջիններից ոչ նուազ չափով կրել էին և կրում էին Թիւրքական միևնոյն բռնութիւններն, ոչ մի խօսք չկար այնտեղ։ Անտես էր առնըւած հայն ամեն տեսակէտներով։ Դիւրին է ըմբռնել այն մեծ ցաւն ու յուսահատական հիասթափումն, որ զգացին Կ. Պօլսի ղեկավարող հայ շրջաններն, երբ տեղեկացան այս պայմաններին։

Ահա ինչպէս է նկարագրում Ներսէս՝ այդ վիճակն և դըրան իբրև հետևանք ձեռք առնուած միջոցները.

«Ընդհանուր պայմանաց մէջ (յունուար 19/31) հայոց ազգին անունն անգամ չկար և դաշնադրութեան վիճաբանութիւնը այն պայմանաց սահմանին մէջ միայն կրնար ըլլալ։ Գրեթէ յուսահատելու էր, և ես չգիտեմ թէ ինչպէս չյուսահատեցանք։ Անկարելի է նկարագրել ազգին մորմոքը, զոր, թողէք ըսեմ, զգացի ի սիրտ և ի բովանդակ անձն իմ. միանգամայն զգացի ահեղն այն պատասխանատուութիւն, որ այն հանդիսաւոր ժամուն կը ծանրանար իմ վրաս, զի ազգը՝ իր Երեսփոխանական Ժողովովը՝ ազգին խնդիրն ինծի էր յանձնած մասնաւորապէս։ Յաջողիլ անկարելի էր սովորական միջոցներով, ոչ ալ սպասելը ներելի էր... Ձեր պատրիարքը մտածեց, խորհրդակցեցաւ։ Իր շուրջը ունէր բոլոր եպիսկոպոսական դասը՝ պատրաստ գործե-

լու իրեն հետ յանուն ազգին, և յանուն ազգին զոհուելու՝ եթէ պէտք ըլլար։ Միացայ իր սրբազան եղբարց հետ, և որոնք արդէն իրենց կոչման օրն առաջի Աստուծոյ երդուեալ էին, նորէն երդուան նուիրել զանձինս ազգին։ Օսմանեան լիազօր դեսպանք դեռ չէին ուղևորած յԱդրիանուպօլիս, ես ու իմ սրբազան եղբայրակիցներս գործել սկսանք...»*)։

Երբ Բ. Դուռն յունուարի սկիզբներն իր լիազօրներն էր ուղարկում հաշտութեան սկզբնական պայմանների մասին բանակցելու, Ներսէս պատրիարք էլ իր հրահանգներն էր ուղարկում Ադրիանուպօլսի առաջնորդական փոխանորդ Գէորգ վարդապետ Ռուսճուգլեանին, որ հետևեալ կերպով է նկարագրում իր՝ գործի սկսելը**).

«Հարկ կը լինէր ինձ ըստ քաղաքական պարտականութեանց ներկայանալ կրան տիւք (graud duc) Նիքօլայի և քօնթ Իկնաթիեֆի՝ բարի գալուստ մաղթելու...։ Մինչդեռ կը սպասէի պատեհ առթի, ահա Փիլիպպուպօլսոյ նախկին ռուսական հիւպատոս Մ. Կիրօֆ հայասէր բարեկամս, որ պուլղարական գործերուն մէջ դեր ունեցած էր, իբր խորհրդական ռուսական դեսպանի յԱդրիանուպօլիս եկած էր...։ Խնդրեցի որ բարեհաճի քօնթ Իկնաթիէֆի դիս ներկայացնել և Հայաստանի ապագայ վիճակին համար ստոյգ տեղեկութիւններ առնելու շնորհ ընել։ Մ. Կիրօֆ ընդունեց մեր այս առաջարկութիւնն և հետևեալ գիշեր ներկայացուց դիս քօնթ Իկնաթիէֆի, ինքն թարգման լինելով մեր խօսակցութեանց, ապահովելով միանգամայն ըզքօնթն թէ իբր գաղտնապահ կրնայ խօսիլ մեզ հետ։ Ըստ օրինի նախ փութացինք ջերմ բարեմաղթութիւններ ընել ի բարօրութիւն կենաց Ռուսիոյ կայսեր, որ ի սէր քրիստոնէութեան պատերազմ հրատարակեց յազատում արևելեան քրիստոնէից, և աստուածապարգև յաջողութեամբ ազատեց պուլղար-քրիստոնեաներն, ինչպէս նաև ասիաբնակ հայերն, որք մի քրիստոնեայ ազգ են ոչ նուազ հարստահարեալ և թշուառ քան զպուլղարն, և, շարունակելով խօսքս, ինչպէս կը լսեմք, ըսի, Ռուսիոյ բանակն Հայաստանի մէկ մասը գրաւած է, ընդ որս Կարս և Կարին և գուցէ ուրիշ գաւառներ ևս. քաղցր է մեզ յուսալ, թէ հայք ևս, ինչպէս պուլղարք, այն ազատութիւնը կը վայելեն. և որքան փափաքելի է մեզ գիտնալ այս, քանզի մեր ամեն յա-

*) Ազգ. Ժողովի 21 յուլիս 1878-ի ատենագրութիւնից։

**) Ռուսճուգլեանի յիշատակագիրը՝ «Ծագումն Հայկական Խնդրոյ» «Ռազմիկ», 1907.

բաբերութիւնքն ընդ Կ. Պոլսոյ խզուած լինելով՝ բնաւ տեղեկութիւն մի չեմք կարող ստանալ Հայաստանի մէջ բնակող մեր եղբարց վրայ»։

Շատ հետաքրքրական և նշանակալից է Իգնատիեվի տըւած հետևեալ պատասխանը.

«Այո, Ռուսիոյ բանակն մինչև Կարին յառաջացած է և գրաւած է։ Հայաստանի այդ մասն այժմ ազատութիւն կը վայելէ, բայց հայ ժողովուրդն ազգովին կամ Հայաստանի մեծ մասը պիտի չկարենայ գտնել առ այժմ այն ազատութիւնը, զոր ունեցած են պուլղարք, վասնզի հայք անպատրաստ գտնուեցան եւ Հայաստանի մէջ դարձած են մեռեալ տարերք։ Ես երբէք տարիէ ի վեր հայոց դատին պաշտպանն և փաստաբանն եղած էի. Թողունք գաւառացի հայոց աղքատութիւնն և անտարբերութիւնը, մանաւանդ ցիրուցան պանդխտութեան դատապարտեալ վիճակը, մինչեւ իսկ Կ. Պոլսոյ հայոց ողջախոհ եւ գործօն մասն՝ սկսեալ Նուպար փաշայէ, արգելք եղած են իմ բարենպատակ գործոցս։ Բայց մի վհատիք, կը յուսադրեմ զձեզ։ Քանի որ Թիւրքիոյ հպատակ էք, ապագային յուսով, այս վայրկեանէս սկսեցէք պատրաստ լինիլ, պատրաստ՝ դաստիարակութեամբ, ուսմամբ և քաղաքագիտութեամբ, պատրաստ՝ նիւթապէս և բարոյապէս, պատրաստ՝ ներքին կազմակերպութեամբ. պատրաստ եղիք այն օրուան համար, յորում քաղաքականութիւնը պիտի առաջնորդէ զձեզ յազատութիւն, և ես պատրաստ եմ միշտ օգնել ձեզ։ Պատրիարքնիդ թող ժամավաճառ չլինի, թող սկսէ գործելու, ժամ է»։

Ռուսճուգլեան իր տեսակցութեան արդիւնքը հաղորդում է Ներսէս պատրիարքին, յունուար 20-ին։

Իգնատիեվի այս պատրաստակամութիւնը, մանաւանդ պատրիարքի արագ շարժուելու յորդորը մեծ ոգևորութիւն պատճառեց Կ. Պոլսում։ Ներսէս և իր խորհրդակիցների խումբն անմիջապէս գործի սկսեցին։ Ամենքը համերաշխ էին այնուհետև։ Ազգային Ժողովի Ա. և Բ. ատենապետներն, Ստեփան փաշա Ասլանեան և Յովհ. էֆ. Նուրեան, գաղտնի պատուիրակ կարգուեցին, որպէս զի յանուն Թիւրքիայի հայութեան և ի դիմաց պատրիարքին՝ բանակցեն ռուսական պատշաճաւոր իշխանութեան հետ Հայաստանի ապագայ կացութեան մասին։ Այս երկու ազդեցիկ անձերը մեծ յարմարութիւն ունէին այս փափուկ պաշտօնին, որովհետև վաղուց արդէն զբաղվում էին այս հարցով, մանաւանդ Նուրեան, և հայ հասարակութեան մէջ մեծ վստահութիւն էին վայելում։ Բացի դրանից, Նրանք, առանց

որևէ կասկած յարուցանելու, կարող էին ռուսաց բանակը գնալ. Այլանեան իբրև զինուորական բժիշկ պիտի զբաղուէր Թիւրքաց զինուորական հիւանդանոցում, իսկ Նուրեան՝ իբրև Կարմիր Մահիկի (որ նոյնն էր, ինչ որ քրիստոնէից մօտ Կարմիր Խաչը) ներկայացուցիչ՝ պիտի հոգար նոյնպէս հիւանդների փոխադրութեան համար: Սրանք՝ պատրիարքի 1878 թ. յունուարի 31 թուակիր յանձնարարական նամակով մեկնեցին Ադրիանուպոլիս, արտաքուստ իբրև Թիւրքական պաշտօնեաներ օսմանեան լիազօրների տրամադրութեան տակ, իսկ ծածկաբար՝ իբրև հայոց պատրիարքի լիազօրները նոյն ռուսական հրամանատարի մօտ: «Նաքա յայտնեցին մեզ,—շարունակում է Ռուսճուգլեան վարդապետ,—ս. պատրիարքի գաղափարներն և հրահանգը՝ թէ պատրիարքը կը փափագի և կարտօնէ Ռուսիոյ դեսպանին և կրան. տիւք Նիքօլայ իշխանին ներկայացնել հայոց թշուառ և հարստահարեալ վիճակն, և Ռուսիոյ կայսեր գթութիւնն հայցել, որոյ ի շնորհս միայն հայերն, իբրև արևելեան քրիստոնեայ ազգ, պիտի կարենան ազատութեան հասնիլ նման պուլղարաց»: Բայց այն միջոցին այդ երկու պատգամաւորներից զատ կար և մի ուրիշ նշանաւոր հայ, որ՝ չնայելով իր անհամեմատ աւելի փափուկ դիրքին՝ շատ մեծ ծառայութիւն է մատուցած ազգային դատին և մեծապէս նպաստած է Սան-Ստեֆանօյի դաշնագրի մէջ 16-րդ յօդուածը մտցնելուն: Այս անձը Համամճեան Սարգիսն էր, արտաքին գործերի մինիստրութեան ընդհ. քարտուղարն, որ մինիստրի օսմանեան լիազօրներ Սավֆէթ փաշայի (արտ. գործ. մինիստր) և Սաադուլլահ բէյի (Բէրլինի դեսպան) խորհրդական էր կարգուած: Այն միջոցին այնպիսի ոգևորութիւն էր տիրում Կ. Պօլսում, որ մեծից սկսած մինչև փոքրը, բոլոր գիտակից հայերը միասիրտ և միահոգի, աչքները ռուսական բանակատեղին ուղղած, ուր յաղթական «Մօսկօֆը» Թիւրքիայի ապագան պիտի որոշէր, սպասում էին այնտեղից Հայաստանի ազատութիւնն, այսինքն մօտաւորապէս այն, ինչ որ ապահովապէս պիտի շնորհուէր Եւրոպական Թիւրքիայի քրիստոնէաբնակ նահանգներին: «Այժմ աստ ոչ կուսակցութիւն կայ և ոչ վէճ,—գրում է Իզմիրլեան*),— ամենեքեան՝ մեծ ու պզտիկ, ամեն բարձր դիրք ունեցող աստիճանաւորք իսկ միահամուռ այդ նպատակին հասնելու գուն կը գործեն...: Խաղաղութեան բանակցութեան առաջին ժամուն աստ շարժեցաւ ազգն համայն»:

---

*) Իզմիրլեանի նամակը Վ. եպ. Մանկունուն Կ. Պօլսից, 13 փետր. 1878.

Նոյն իսկ չարաբաստիկ կրօնական խտրութիւնները տեղի էին տուած Հայաստանի, ընդհանուր ազգի վերածնութեան մեծ գաղափարի առջև։ Նշանաւոր կաթոլիկ հայեր Գրիգոր Օտեանի շուրջը խմբուած եռանդով գործում էին իրանց ազգակիցների հետ նոյն ընդհանուր նպատակի համար[1])։ Միայն թէ Ներսէսի խմբի և միւս, այն է՝ բողոքական և մանաւանդ կաթոլիկ գործիչների միջև ծրագրային մի մեծ տարբերութիւն կար։ Այս վերջինները «Գաղղիոյ և Անգղիոյ միջոցաւ Կիլիկիոյ մասին համար կ'աշխատին յանուն հայութեան» —գրում է Իզմիրլեան[2])։ Այս վերջին գաղափարը ներքնապէս փայփայում էր նաև Խորէն եպ. Նար Բէյ, ոչ իբրև նախկին կաթոլիկ, այլ, ինչպէս ենթադրվում է, այն յոյսով, թէ ի միջի այլոց իր եղբօր թեկնածութիւնը կարելի կը լինի յաջողեցնել ապագայ հայ իշխանութեան պետի պաշտօնի համար[3])։ Կիլիկիայում հայկական ինքնօրինութիւնը կենդանացնելու մասին եղած այս ջանքերին պատշաճաւոր կարևորութիւն չտուեցին այն ժամանակ և խնդիրը ծրագրային շրջանից դուրս չելաւ։

Բացի Ադրիանուպոլիս պատգամաւորներ ուղարկելուց, որոշուեց ծածկաբար անմիջապէս երկու աղերսագիր պատրաստել յանուն Թիւրքիայի հայութեան, յաղթական Ռուսաստանի կայսեր և իր գլխաւոր խորհրդականի՝ պատասխանատու մինիստրին ներկայացնելու համար։ Յառաջ բերենք ամբողջապէս Աղեքսանդր Բ. կայսեր և իշխ. Գորչակովին ուղղուած այս կարևոր վաւերագրերի պատճէնները[4])։

Ա) Աղերսագիր Աղեքսանդր Բ. կայսեր.

«Տէր Արքայ,

«Այն պատերազմէն յետոյ, որ վախճան առաւ Ձեր Կայսերական Մեծութեան զինուց յաղթութեամբ, և որ ամենէն

---

[1]) «Գրիգոր Օտեան մէկ կողմէ պատրիարքի գաղտնի խորհրդականն է իր խօսքովը կամ գրիչովը, միւս կողմէ իր տունը եղած է ժամադրութեան վայր մը, ուր Սերվիչէն, Քեաթիպեան, Մ. Փորթուգալ, Յովհ. Սագըզ և Գէորգ Սամանճեան (այս վերջին երեքը հայ-կաթոլիկներ էին. Փորթուգալ և Սագըզ ապագայում բարձրացան մինիստրական պաշտօնի) պիտի գային գիշերուան մթին և լռին ժամերու ատեն, իրենց մտքին լոյսը բերելու մեծ հարցի մը մէջ, որ այնքան յուսալից եղած էր ի սկզբան...»։ («Գր. Օտեան», Կ. Պոլիս, 1910, էջ, ԺԵ.)

[2]) Տես Իզմիրլեանի վերոյիշեալ նամակը (Կաթող. Դիւան Էջմիածնի)։

[3]) Նար Բէյի եղբայրն էր Գուիտօն Լուսինեան, նախկին հ. Ամբրոսիոս վ. Գալֆայեան, Վենետիկի Մխիթարեան վարդապետ։ Այս Լուսինեանը տարիներ վերջը դարձեալ ասպարէզ պիտի իջնէր հայկական խնդրի առթիւ, իբրև նախկին հայկական արքայական աթոռի ժառանգ...։

[4]) Այս աղերսագիրների բնագիրը ֆրանսերէն է։ Մենք յառաջ ենք բերում հայերէն թարգմանութիւնն, ըստ այն օրինակին, որ ուղարկուած է Կ. Պոլսից Գէորգ Դ. կաթողիկոսին ի գիտութիւն։

աւելի փառաւորն է, թող ներուի Թիւրքիոյ Հայոց եկեղեցական գլխաւոր պաշտօնէիցս ներկայացնել իրենց զարմացումը, յարգանքը և խոնարհ շնորհաւորութիւնները, յոտս Ձեր Կայսերական Մեծութեան Աթոռոյն, որոյ հետ կը միանան նաև Հայոց ազգի ուխտն ու փափաքներն։

«Տէր Արքայ, Ձեր զէնքերն յաղթանակեցին այնպիսի մի ժողովրդեան, որ քաջ պատերազմիկ ժողովրդոց մին է, որով Ձեր Կայսերական զօրութիւնը նոր փայլ մը ստացաւ աշխարհի վրայ։ Ձեր սուրը յաղթանակ կանգնեց թէ Եւրոպիոյ և թէ Ասիոյ մէջ, և Ձեր զօրապետներն ու զօրքերը, ինչպէս Պուլկարիոյ դաշտաց մէջ իրենց ամենամաքուր արիւնը թափեցին, նոյնպէս թափեցին Հայաստանի այն հնօրեայ հողոյն վրայ, որ մեր ծընուիլը տեսաւ և զոր մեր հայրերն ի սկզբանէ դարուց իրենց քրտամբն և արտասուօքն ոռոգեցին։

«Տէր Արքայ, Ձեր խոստումներն ամենուն համար էին, Ձեր խնամքը պէտք է ամենուն համար հաւասար տարածուի։ Հայերն ալ ունին այնչափ իրաւունք, որչափ ունին Թիւրքիոյ միւս քրիստոնեայ հասարակութիւնք՝ այն հոգատարութեան, որ կը գործէ աշխարհի վրայ առանց շահասիրութեան, և այս անշահասիրութիւնն ամենէն աւելի գեղեցիկ յատկութիւնն է իշխանի մը, որ աշխարհի զօրաւորն է և զոր Աստուած Մեծութեան տիտղոսով պսակած է։

«Այո, Տէր Արքայ, Հայերն այս նշանաւոր պարագային մէջ, յորում իրենց կրօնակից եղբարց վիճակը կորոշուի, կը համարձակին Ձեր Կայսերական Մեծութեան զօրաւոր պաշտպանութիւնն հայցել։ Նոքա ալ վշտացած են, նոքա ալ կը յուսան, խառնիճաղանճ վայրենիներէ շրջապատեալ և Եւրոպայէն հեռի մի անկիւն նետուած, իրենց տառապանքներն աւելի անգթաբար կը գործուին քան թէ միւս քրիստոնէից, առանց իրենց աղաղակները լսելի լինելու։

«Ինչ բան, որ այսօր կը խնդրենք, և ինչ բան, որ համարձակութիւն առած կը հայցեմք Ձեր Կայսերական Մեծութենէ յանուն նոցա, ուրիշ բան չէ՝ եթէ ոչ Եւրոպական Թիւրքիոյ քրիստոնէից վիճակին նմանութիւնը։ Եթէ Եւրոպական Թիւրքիոյ գաւառաց ինքնօրէն վարչութիւնը՝ միևնոյն երաշխաւորութիւններով տրուի հայոց հասարակութեան, այն ատեն նոցա սրտեռանդն ցանկութիւնները լսուած պիտի լինին, և վախճան պիտի առնու իրենց ընդերկար նահատակութիւնը։

«Տէր Արքայ, խիստ դառն է մեզ համար, որ խաբուինք մեր յուսոյն մէջ. բայց այս կարելիութեան չեմք ուզեր հաւա-

տալ միայն Ձեր վեհանձնութեան վրայ ունեցած հաւատարմութեան շնորհիւ։

«Կ'աղաչեմք Ձեր Մեծութիւնը հաճիլ ընդունելու մեր սրբտաբուղխ օրհնութեանց հետ մեր խորին յարգանքներն, ընդ որոյ պատիւ ունիմք լինել,

Տէր Արքայ,

«Ձեր Կայսերական Մեծութեան
«ամենախոնարհ և ամենահնազանդ ծառայք
(ստորագրութիւններ)

«Պատրիարքարան Հայոց

«Կ. Պօլիս, 1/13 փետր. 1878».

Բ) Աղերսագիր իշխան Գորչակովին.

«Վսեմափայլ Տէր,

Մենք, ստորագրեալքս, գլխաւոր եկեղեցական պաշտօնեայք հասարակութեան հայոց Թիւրքիոյ, կը համարձակիմք Նորին Կայսերական Մեծութեան մի աղերսագիր մատուցանել, և կաղաչեմք յարգանօք Ձեր Վսեմութիւնը, որ բարեհաճիք զայն յոտս Նորին Կայսերական Աթոռոյն դնել։

«Ձեր Վսեմութիւնը թող չզարմանայ, որ Արևելքին մէջ տեղի ունեցած մեծամեծ փոփոխութեանց ժամանակ, հայերն իրենց կողմանէ բոլոր յոյսերն Ռուսիոյ մեծազօր Կայսեր, որ թէ Ասիոյ և թէ Եւրոպիոյ մէջ փառաւոր յաղթանակ կանգնեց, վեհանձնութեան և Նորին գլխաւոր պաշտօնէին բարձր իմաստութեան վրայ դնեն, որոյ հանճարը իբր քառորդ դարէ ի վեր իր երկրին քաղաքականութիւնը փառաւորապէս կը վարէ։ Չեն ուզեր (հայերը) մանրամասնաբար իրենց տառապանքները նկարագրել, որովհետև հարկ չէ այսօր նոր դատախազութիւն մը կազմել իրենց տէրերուն դէմ։

«Սա ճշմարիտ է, որ եթէ միւս քրիստոնեայ ժողովուրդք կը նեղուին, հայերը կրկնապատիկ հալածահարեալ են, այնպիսի թշնամեաց մէջ լինելով, որք հայ չեն և ամենուրեք անտարբերութիւն կը ցուցնեն իրենց՝ իրենց ցաւոց նկատմամբ։

«Այսօր ալ երեսի վրայ ձգուած կը կարծուին. միայն իրենք կը զգան, թէ պիտի պաշտպանուին, սա բարեբախտութիւնն ունենալով որ Ռուսիոյ համար օտար չեն, զի իրենց ազգութենէն

մի նշանաւոր հատուած արդէն այս երկրին՝ Ռուսիոյ մէջ կը բնակին՝ և իրենց Մայր Եկեղեցին Նորին Կայսերական Մեծութեան բարի պաշտպանութիւնը կը վայելէ։

«Արեւելեան քրիստոնէից վրայ եղած այս պաշտպանութիւնը զիրենք կը համարձակեցնէ և իրաւունք կուտայ յուսալու, թէ իւրեանց բողոքը այս վայրկեանին պիտի լսուի և պիտի տեսնեն Թիւրքիոյ մէջ հաստատուելիք նոր օրէնքները։ Եթէ իրենց գոյութիւնը պաշտպանութիւն չգտնէ՝ ծանրապէս վտանգի պիտի ենթարկուի։

«Ձեր Վսեմութիւնը, որոյ հայեցողութիւնը և բարձր հեռատեսութիւնը իւր Օգոստափառ Տիրոջ նպատակաց զարմանալի կերպով կը ծառայէ, հարկաւ մեր խնդրոյն կարևորութիւն պիտի տայ և անտարակոյս իւր արդար միջնորդութիւնը պիտի գործադրէ առ Կայսրն, զԱյն հաճեցնելոյ համար։

«Այս խնդիրը կը ներկայացնեմք Անոր, որ իւր սուրը արեւելեան քրիստոնէից պաշտպանութեան համար մերկացոյց. ուրիշ բան չեմք խնդրեր, եթէ ոչ Ռումէլիի մեր կրօնակից եղբարց նմանիլ։ Թիւրքիոյ մէջ կայ մաս մը, որ իւր նախնեաց անունը կը կրէ (Հայաստան), և ուր հայոց մեծամասնութիւնը ժողոված է. ուստի վարչութիւն մը հաստատելը շատ դիւրին պիտի լինի։ Կուզենք, որ այնտեղ ազգային կեանքով ապրինք, ընդ օրինօք տանուտէրական վարչութեան՝ առանց քաղաքական որեւէ ամբարտաւանութեան և արգելիչ կառավարութեան մը ազդեցութիւնն ունենալոյ և այնտեղ պաշտպանել մեր Հայրենիքն ու տաճարները։

«Հայք՝ կը համարձակիմք ասել թէ՝ այս նոր կեանքն զարգացնելոյ ամէն տարերք ունին իրենց մէջ, զոր Ազատարար Կայսեր վեհանձնութեան պիտի պարտին։ Ո՞չ ապաքէն Թիւրքական ամենալաւ գործակալներն հայոց մէջ ալ գտնուած են, ինչպէս այլ քրիստոնէից։ Կրթութիւնն աւելի տարածուած է ի հայս, քան թէ Թիւրքիոյ մի քանի հասարակութեանց մէջ։ Եթէ այլոց ուշադրութիւնը գրաւելոյ չափ կառավարչական կարողութիւն ալ չունենան, զի այսչափ ատեն ուրիշներէ կառավարեալ են, սակայն այն երաշխաւորութիւնք, որով նոր կարգադրութիւնները Ռումէլիի մէջ եղածին պէս տեղի պիտի ունենան, բաւական են սոյն գործոյն յաջողութեան համար, որ հայոց ցանկութեան վերջին կատարումն է։

«Ձեմք վարանիր զրուցել Ձեր Վսեմութեան թէ այս երաշխաւորութիւններն, որ գլխաւորաբար Հայաստանի ազատութեան կը վերաբերին, ամենայն կերպով իրենց պատճառն ու-

նին, զոր յանուն բոլոր ազգին կը խնդրեմք իբրև մեր գերագոյն փրկութիւնը։

«Արդեօք լսելի պիտի լինին մեր ձայներն. երանի թէ, Վսեմափայլ Տէր, մեր սրտերում մէջ կարդայիք թէ մեր և թէ ամբողջ ժողովրդեան մը յաւիտենական և խոր երախտագիտութիւնը։

«Պատիւ կը համարիմք, Վսեմափայլ Տէր, լինել՝ Ձեր Բարձրութեան

«Խոնարհ ծառայք ի Յիսուս Քրիստոս.

(ստորագրութիւններ)

«Կ. Պոլիս, 1/13 փետրուար 1878».

Ստորագրել են Ներսէս պատր. Վարժապետեան և 9 եպիսկոպոս։

Այս աղերսագիրներն երկ-երկու օրինակ ստորագրուեցին։ Որովհետև ժամանակը շատ կարճ էր, օրէ օր սպասվում էր հաշտութեան կնքուելն, ուստի մի-մի օրինակն առանձին օրհնութեան գրով յանուն մեծ իշխան Նիկոլայ Նիկոլայեվիչի՝ աճապարանքով ուղարկուեց Ադրիանուպոլիս*), Իգնատիեվին, իսկ միւս օրինակները յանձնուեցին Խրիմեան և Նար Բէյ սրբազաններին։ Նախ այնպէս էր որոշուած, որ այս երկու արքեպիսկոպոսներն՝ իբրև Թիւրքիայի հայոց լիազօրներ, գնան Էջմիածին, իրանց հետ տանելով վերոյիշեալ աղերսագիրներն, և Գէորգ կաթողիկոսի միջոցով մատուցանեն կայսեր և Գօրչակովին։ Իսկ Իզմիրլեան Մատթէոս եպիսկոպոս նրանցից յառաջ անմիջապէս պիտի մեկնէր Էջմիածին՝ կաթողիկոսին բերանացի բացատրութիւններ տալու համար, որ երբ կաթողիկոսը յարմար համարի և հեռագրէ՝ երկու արքեպիսկոպոսներն էլ իսկոյն մեկնեն Ռուսաստան։ Սակայն, ինչպէս յետոյ պիտի տեսնենք, Գէորգ կաթողիկոս չարդարացրեց Կ.-պոլսեցիների յոյսերն և ամբողջ այս սկզբնական ծրագիրը հարկ եղաւ փոխել։ Միայն Իզմիրլեան եկաւ Էջմիածին, այն էլ բաւական ժամանակ վերջը. իսկ Խրիմեան և Խորէն ուրիշ կողմ մեկնեցին դարձեալ ի հարկէ նոյն նպատակով**)։

---

*) Հայոց պատրիարքարանի և Ադրիանուպոլսի ռուսական բանակատեղու միջև այս յարաբերութիւնը բնականաբար շատ գաղտնի էր կատարվում։ Ադրիանուպոլսից, այն միջոցին, ամեն օր երկաթուղու յատուկ գնացք էր մեկնում Կ. Պոլիս մեծ իշխանի և ռուսական դիւանագիտական թղթակցութիւնը տանելու համար. այս կառախմբին էին յանձնվում նաև հայոց թղթերը։ Բարեբախտաբար թղթատար պաշտօնեան հայ էր, և անձամբ բերում տանում էր նամակները պատրիարքին։

**) Իզմիրլեան շատ ջերմ գործունէութիւն է ունեցած հայկական խըն-

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

*Հայ պատուիրակների գործունէութիւնն Ադրիանուպոլսում.—Իգնատիեվի համակրական վերաբերմունքը.—Հայաստանի ինքնավարութեան մասին հայոց իղձերը, նախնական յօդուածն և Թիւրք լիազօրների ընդդիմութիւնը.—Անգլիայի հակառակութիւնը.—Քաղաքական բարդութիւնների երկիւղը.—Մեծ իշխանի Սան-Ստէֆանօ տեղափոխուելը.—Խորէն եպ. Նար-Բէյի գործունէութիւնը.—Սան-Ստէֆանօյի դաշնագիրն և նրա տրամադրութիւնները հայոց մասին.—Ներսէս պատրիարքն և դաշնագրի թողած տպաւորութիւնը հայերի վրայ.—Ինքնավարութեան անյաջողութեան պատճառները.—Քննական տեսութիւն 16-դ յօդուածի մասին.—Արգայլի դքսի քննադատութիւնը։*

Հայ պատուիրակները շատ փափուկ կացութեան մէջ էին գտնվում Ադրիանուպոլսում։ Նուբեան և Ասլանեան, իրանց պաշտօնական դիրքի պատճառով, անկարող էին մի քայլ իսկ անել առանց Թիւրք լիազօրների գիտութեան։ Բայց միւս կողմից չէր կարելի ժամանակ կորցնել. պէտք էր անյապաղ կատարել իրանց ստանձնած ծանր և պատասխանատու ազգային պարտականութիւնը։ Նուբեան Յովհաննէս էֆէնդին է լինում, որ յաջողում է առաջին տեսակցութիւնն ունենալ։ Մի գիշեր՝ Ռուսճուգլեանի ընկերութեամբ ծածուկ գնում է Իգնատիեվի մօտ և ծանօթացնում է նրան երկրի վիճակը, ներկայացնելով այն բաղձանքներն, որ հայերը տածում էին իրանց երկրի ապագայի նկատմամբ, իբրև հետևանք ռուսական յաղթական պատերազմի։ Մի ժամ տևող այս խօսակցութեան արդիւնքն այն եղաւ, ըստ Ռուսճուգլեանի, որ Իգնատիեվ խոստացաւ մեծ իշխան հրամանատարին հաղորդել հայոց խնդիրը, նպաստաւոր կերպով, և

---

դրի այս շրջանում։ Նա մեզ պատմել է նաև հետևեալ բնորոշ դէպքը։ Մի օր Ներսէս պատրիարք կանչում է Իզմիրլեանին և նրան ասում, թէ ինք անյարմար է համարում խորհրդակից եպիսկոպոսներին իր մօտ հրաւիրել, պատրաստուած մի կարևոր թուղթը ստորագրելու, որպէս զի ոստիկանութեան ուշադրութիւնն և կասկածը չգրաւէ. ուստի անհրաժեշտ էր, որ Իզմիրլեան անձամբ տանէր պտտցնէր թուղթը բոլոր եպիսկոպոսների մօտ և ստորագրել տար նրանց։ Մատթէոս եպիսկոպոս յանձն է առնում։ Որովհետև պատերազմի ժամանակ էր և քաղաքը պաշարման դրութեան մէջ էր, ուստի զգուշութեան համար նա այդ գաղտնի պաշտօնագիրը կապում է իր մէջքին, ամբողջ օրը քաղաքի զանազան, միմեանցից բաւականաչափ հեռու թաղերը շրջելով այցելում է բոլոր եպիսկոպոսներին, բացատրում է գործի հանգամանքն և ստորագրել է տալիս բոլորին։ Ներսէս ամբողջ օրը խիստ անհանգիստ կերպով սպասում էր իր բնակարանում. և երբ Իզմիրլեան երեկոյեան գալիս է և թուղթը մէջքից հանելով յանձնում է նրան, Ներսէս չափազանց ուրախանում է։

առաջարկեց, որ 2 օր վերջը գնա նրայ մօտ։ Որոշուած օրը, դարձեալ գիշեր ժամանակ, Ասլանեանին եւ միասին առնելով նա գնում է Իգնատիեվի մօտ և երկար տեսնվում նրա հետ։ Իգնատիեվ բերել է իր խոստացած պատասխանը. «Տեսնուած եմ կրան տիւքի (մեծ իշխանի) հետ և մինչև մէկ աստիճան յաջող է ձեր խնդիրը։ Կայսեր հետ բանակցութեան մէջ եմք. մէկ երկու օրէն կայսեր հաւանութիւնն և հրահանգը կը յուսամ որ պիտի ընդունիմք. Աղօթեցէք, որ Աստուած յաջողէ»։ Ռուսճուգլեան՝ այս տեղեկութիւնը տալուց յետոյ պատմում է, որ իր յատուկ հրաւէրի համաձայն՝ մեծ իշխան Նիկոլայ Նիկոլայեվիչ իր շքախմբով փետրուարի 8-ին գնացել է Ադրիանուպոլսի հայ եկեղեցին, ուր գոհաբանական աղօթք է կատարուել Ռուսաստանի կայսեր համար և հոգեհանգիստ՝ պատերազմի մէջ ընկած քրիստոնեայ զինուորների յիշատակին։ «Նորին բարձրութեան ընկերացած էին,—շարունակում է Ռուսճուգլեան իր յիշատակագրում,—քօնթ Իկնատիէֆ, կոմս Նէլիտօֆ, 16 ժէնէրալ և բարձրաստիճան պաշտօնեայք. յետ բարեմաղթութեան, որ շատ կանոնաւոր տեղի ունեցաւ, հրաւիրեցի զնորին բարձրութիւնն յառաջնորդարան, ուր թէյ պատրաստուեցաւ։ Ներկայ գտնուեցան նաև Ստեփան փաշա Ասլանեան և Յովհ. էֆ. Նուրեան, որոց համար Սավֆէթ փաշա թոյլտուութիւն ըրած չէր ներկայ գտնուիլ բարեմաղթութեան, անշուշտ ինչպէս կը ցանկայինք իսկ։ Այս տեսակցութեան նիւթն Հայաստանի հայ կեղեքեալ ժողովուրդը պիտի լինէր։ Ի մէջ այլոց կրան տիւք այնպիսի հարցումներ ուղղեց ինձ Հայաստանի աշխարհագրական դրից և բնակչաց վիճակին նկատմամբ, որ զինքը գոհացնելու չափ տեղեկութիւններ չունէի, ուստի այս յարմար առիթ եղաւ ինձ Ստեփան փաշան և Նուրեան էֆէնդին կրան տիւք Նիքօլայ իշխանին ներկայացնելու, ուստի նորին բարձրութեան պատասխանեցի թէ՝ «Ձերդ բարձրութեան այս հարցմանց լիովին տեղեկութիւններ կրնան տալ Կ. Պոլսոյ Ազգ. Երեսփոխանական Ժողովոյ երկու ատենապետներն՝ Ստեփան փաշա և Նուրեան էֆէնդի, որք հոս կը գտնուին Սավֆէթ փաշայի քով. եթէ հրաման կընէք՝ անմիջապէս կրնան գալ և ներկայանալ»։—«Այո, կը փափագիմ տեսնալ, թող գան» պատասխանեց դուքսն. և անմիջապէս թիկնապահներէն մին ղրկուեցաւ Սավֆէթ փաշայի տուն, ուր մեր խորհրդականք (Ասլանեան և Նուրեան) լուր կը սպասէին ի մէնջ։ Սավֆէթ փաշա այս բարձրագոյն հրամանին չկրնալով դէմ դնել՝ կարտօնէ, որ ներկայանան։ Կրան տիւք սիրով ընդունեց մեր վսեմ.խորհրդա-

կաններն, և առաւել քան կէս ժամ խօսեցան մէկտեղ և պաղատանօք խնդրեցին Հայաստանի ազատութիւնը. ի պահուն, երբ մեծ դուքսը կը մեկնէր, դարձեալ կրկնեցի, որ չմոռնայ հայ տառապեալ ժողովուրդն. այն ատեն իմ ձեռքը սեղմելով ըսաւ. «Ոչ ես և ոչ եղբայրս կայսրն չեմք մոռնար զձեզ»: Հետևեալ օր քոնթ Իկնաթիէֆի երթալով, կրան տուկ Նիկօլայի ներկայանալու և շնորհակալութիւն յայտնելու համար հրաման և ժամադրութիւն խնդրեցի. սիրով ընդունելով որոշեց օրն և ժամ: Որոշեալ ժամին երբ ներկայացանք նորին բարձրութեան՝ Իկնաթիէֆ և Նէլիտօֆ հոն գտնուեցան: Յանուն հայ հասարակութեան շնորհակալութիւն յայտնեցի այն մեծ պատուոյն, զոր ընծայեց ազգին, որ այժմ լի է յոյսով և սիրով առ բարեխնամ ռուս կառավարութիւնն: Յայնժամ իշխանն համակրանօք սեղմեց ձեռքս և ըսաւ. «Հայոց սիրալիր ընդունելութենէն շատ գոհ մնացի և կայսեր՝ եղբօրս անմիջապէս հեռագրեցի իմ գոհունակութիւնս, թէ այսպիսի ընդունելութիւն, սէր և համակրութիւն չտեսայ ոչ ի յոյնս և ոչ յայլ ազգս. յետ մի քանի աւուրց պիտի մեկնիմ քաղաքէս յԱյ-Ստէֆանօ, ուր մօտ պիտի լինիմք ի Գում-Գափու ձեր պատրիարքին: Գրէ պատրիարքին, թէ ձեր խնդիրն և յոյսն ի դերև չպիտի ելնեն, անհոգ եղէք, եղբօրս հետ բանակցութեան մէջ ենք»:

Մեծ իշխանը հայ եպիսկոպոսների 2 աղերսագիրներն ստացել էր Ադրիանուպօլսում և ուղարկել Պետերբուրգ, ուր այս հարցի նկատմամբ հողն արդէն փոքր ի շատէ պատրաստ էր, շնորհիւ այն աղերսագրի, որ Գրիգոր Արծրունու նախաձեռնութեամբ Թիֆլիսի հայերը մատուցել էին Կովկասի փոխարքային, կայսեր ներկայացնելու համար: Ուստի երբ Կ.-պօլսեցիների աղերսանքի մասին էլ տեղեկութիւն է ստանում Ադրիանուպօլսից, մեծահոգի Ալէքսանդր Բ. կայսրը տալիս է իր համաձայնութիւնն, որ առաջիկայ հաշտութեան դաշնագրում պայման դրուի հայ ժողովրդի վիճակի բարւոքման մասին ևս: Կոմս Իգնատիեվ, այս պատասխանն ստանալով, կանչում է իր մօտ Ռուսճուգլեանին և նրան աւետում է. «Աչքդ լոյս. գործերնիդ յաջող է. կայսեր հաւանութիւնն ստացանք: Ձեր խնդիրը պիտի անցնի ի կարգս յօդուածոց ռուս-թիւրք դաշնագրութեան մէջ. ընդ փոյթ պարտիք մի ծրագիր ներկայացնել կրան տուքին (մեծ իշխանին) թէ ինչ են հայոց իղձն ու փափագը»: Աւելորդ է ասել, թէ որքան ուրախանում են պատուիրակներն այս բարեյաջող լուրն ստանալով: Բայց ոչ ժամանակ կար և ոչ էլ պէտք՝ Կ. Պօլսից հրահանգ ուզելու այս ծրագրի մասին,

*որի հիմունքն արդէն որոշուած էին ազգային երեսփոխանների 1877 հոկտ. 21-ի խորհրդակցական ժողովում: Ինչպէս նախորդ Գլխում տեսանք, այնտեղ մշակուած էին երեք խնդիր՝ երեք տարբեր պարագաների համաձայն: Այժմ պարագաներն այնպէս բերին, որ, ըստ երկուստեք կայացած ռուս-թրքական համաձայնութեան, Հայաստանի մեծագոյն մասը պիտի վերադարձուէր թրքական իշխանութեան, ուստի հայկական ծրագրի Ա. կէտն, որ արդէն մեծ տհաճութեամբ էր ընդունուել, ինքնին ջնջուելով՝ մնում էր Բ. և Գ. կէտերի համաձայն վարչական ինքնավարութիւն խնդրել: Ասլանեան և Նուբեան, արդէն իբրև նոյն ժողովի ղեկավարները, շատ լաւ ծանօթ էին ծրագրի բոլոր մանրամասնութիւններին կամ առհասարակ Կ. Պօլսի եկեղեցական և աշխարհական ղեկավարող շրջանների մտքին և իղձերին: Նրանք շատ լաւ էին իմանում նմանապէս, որ Ներսէս պատրիարք, եպիսկոպոսական դասի հետ իր համաձայնութիւնը կայացնելուց յետոյ, եռանդով զբաղուած էր այս հարցով: Իր խմբի հետ խորհրդակցելով Ներսէս արդէն պատրաստել էր իր պատճառաբանեալ ծրագիրն* Հայաստանի ինքնավարութեան *մասին՝ յատկապէս Բ. Դրան ներկայացնելու համար:* Ինքնավարութեան գլխաւոր հիմունքն *այն էին, ինչ որ Լիբանանը վաղուց վայելում էր: Ներսէս այս ծրագիրը Խառն Ժողովի հաստատութեանն առաջարկեց (1878) յունուարի սկիզբները: Թէև «այս առաջարկութիւնը Խառն Ժողովին մէջ յափշտակուած կուսակիցներ ունեցաւ»*), բայց տիրող հանգամանքների շնորհիւ անյարմար էր համարուել գործել յանուն Ազգային Վարչութեան և այս պահանջն անել Բ. Դռնից: Այս բոլորին ծանօթ լինելով անշուշտ, հայ պատուիրակները դժուարութիւն չունեցան կազմել «մի ծրագիր՝ հանդերձ խնդրագրով, որով կը խնդրուէր,—ասում է Ռուսճուգլեան,—ազգային ինքնօրէնութիւն մը Հայաստանի այն գաւառներուն համար, ուր կը գտնուին բազմաթիւ հայեր, ինչպէս Վան, Մուշ, Կարին, Տիգրանակերտ և այլն»: Եւ որովհետև թէ Ասլանեան և թէ Նուբեան իրանց պաշտօնական դիրքի բերմամբ ստիպուած էին գաղտնաբար գործել և երևան չելնել, ուստի ծրագիրն և խնդրագիրը թէ ստորագրեց և թէ ներկայացրեց Իգնատիևին՝ Գէորգ վարդապետ Ռուսճուգլեան, որ դրանից մի օրինակն էլ ուղարկեց Կ. Պօլիս Ներսէս պատրիարքին:*

*«Մի քանի օր վերջ,—գրում է Ռուսճուգլեան,—քօնթ Իկ-*

---

**) «Մշակ», 1878 № 15. Նամակ Կ. Պօլսից 13 յունուար 1878.*

նաթիէֆ աւետեց մեզ թէ դաշնագրոյն 16-րդ յօդուածը Հայկական Խնդիրը կը պարունակէ. ահաւասիկ իմաստը։ «Թիւրքիոյ եւրոպական գաւառաց մէջ տեղի ունեցած անկարգութեանց և հարստահարութեանց համանմանն ասիական գաւառաց մէջ տեղի ունենալով, ասոր առաջքն առնելու համար սուլթանն երաշխաւոր կը կենայ Ռուսիոյ կայսեր քով, որոշմամբ թէ՝ Կաւկասեան նահանգի սահմանակից հայաբնակ գաւառներուն (Կարին, Մուշ, Վան, Տիգրանակերտ, Սեբաստիա և այլն) վարչական ինքնօրինութիւն մը տայ, վիլայէթի օրինաց մէջ հարկ եղած փոփոխութիւններն ընելով և զայն ապահովել իրական երաշխաւորութեամբ սուլթանին»։ Այս յօդուածն, որի խմբագրութիւնը պատկանում էր Իգնատիեվին, բովանդակում էր հայ պատգամաւորների գլխաւոր պահանջներն և գոհացում էր տալիս նրանց բաղձանքին։

Դժբախտաբար այս պահանջը Թիւրք լիազօրների բուռն ընդդիմութեանը բաղխեցաւ. Նրանք բացէ ի բաց մերժեցին, յայտնելով որ առանց կանխապէս սուլթանի հաւանութիւնն առնելու չէին կարող ընդունել հայկական «ինքնավարութիւնը»։ Թիւրքերը չափազանց զարմացած էին, որ յանկարծ Փոքր-Ասիայի մի կարևոր մասի համար էլ «վարչական ինքնօրինութիւն» էր պահանջվում յօգուտ հայերի, որոնք մինչև այն օր երբէք օտարի միջամտութեան չէին դիմել իրանց վիճակի բարեփոխման համար, ո՛ւր մնաց այժմ Թիւրքիայի յաղթական թշնամուն...։ Նրանք անմիջապէս կանչում են առաջնորդական փոխանորդին և նրանից բացատրութիւն պահանջում։ Ռուսճուգլեան անգիտանալ է ձևանում և պատասխանում է մինչև իսկ, թէ «հաւանականութենէ շատ հեռու է հայոց կողմանէ բողոք տեղի ունենալը, այլ Ռուսիոյ շահը կը պահանջէ նոր խնդիրներ յարուցանել, այն յուսով որ եթէ հայերն իմանան՝ գուցէ գործիք մը լինին իւր ձեռք, բայց հայ ժողովուրդը գիտէ որոշել իւր շահն և վնասը. գիտէ Ռուսիոյ քաղաքականութիւնն, անցեալին մէջ փորձեր ունի, փորձառու է։ Նա մանաւանդ հայերն հինգ դար է ի վեր գոհ են իրենց կառավարութենէն, Ռուսիոյ գործիք չեն ըլլար։ Ռուսիա այս պատրուակաւ կուզէ Հայաստանի մէկ մասը գրաւել և այլն և այլն»*)։

---

*) Ճիշտ դրա նման հայեացք է յայտնում այժմ՝ մի Թիւրք պատմագիր Սան-Ստէֆանոյի 16-րդ յօդուածի մասին.

«Ռուսաստանը բալկանեան քրիստոնեաների նկատմամբ իր մտադրութիւնն իրագործելուց յետոյ իր ուշադրութիւնը դարձրել էր Փոքր Ասիայի վրայ։ Ընդդէմ Բ. Դրան՝ հայերի կողմը պահելով, նա աշխատում էր Անա-

Վերջապէս Իգնատիեվի պնդումի վրայ, որ ասել էր, թէ կայսեր պահանջն է այդ, Թիւրք լիազօրները հարկադրուած եղան Սան Ստեֆանօյում ընդունել հայոց վերաբերեալ յօդուածը, բայց բոլորովին տարբեր պատճառաբանութեամբ և տարբեր պարտաւորութեամբ։

Հաշտութեան բանակցութիւններն երկարում էին. առհասարակ նկատելի էր, որ Թիւրքերն, որոնք յառաջ այնքան ցանկանում էին իրանց համար աղէտալի պատերազմը շուտափոյթ վերջացնել և զինադադար կնքել, այժմ, երբ այս վերջինը կատարուած էր, այլ ևս չէին շտապում խաղաղութեան դաշն կապելու համար։ Այս մասին պաշտօնական բանակցութիւններն սկսել էին փետր. 2/14-ին, բայց շարունակվում էին չափազանց դանդաղ։ Պատճառն այն էր, որ քաղաքական հորիզոնը մթագնել էր, և Թիւրքերը ծածուկ յոյս ունէին այդ հանգամանքից օգտուելու։ Անգլիան շատ անհանգիստ էր բանակցութիւնների ընթացքի մասին, մանաւանդ երբ Ռուսաստանը մերժեց նրա միջնորդութիւնը զինադադարի մասին և ուղղակի Թիւրքիայի հետ պայմանաւորուեց, որի մանրամասնութիւնները գաղտնի էին պահվում Եւրոպայից։ Անգլիան վախենում էր, թէ Ռուսաստանն անակնկալ կերպով կը մտնէ և կը գրաւէ Կ. Պոլիսը։ Ուստի այս պատահականութեան առաջն առնելու համար հրաման էր ուղարկել Միջերկրականի իր նաւատորմղին, որ նոյն իսկ բռնի ոյժով անցնի Դարդանէլի նեղուցն և մտնէ Կ. Պոլիս՝ իբր թէ անգլ. հպատակներին պաշտպանելու նպատակով։ Այս կարգադրութիւնը սաստիկ զայրոյթ պատճառեց ռուս կառավարութեան, որ անգլիական դահլիճի այդ սպառնալիքին պատասխանեց, յայտարարելով թէ Ռուսաստանն ևս ճիշտ նոյն նպատակով, այսինքն իր հպատակներին պաշտպանելու համար, իր բանակը պիտի մտցնէ Կ. Պոլիս։ Այս դիւանագիտական ընդհարումը, մանաւանդ ռուսների գալը, մեծ իրարանցում պատճառեց Կ. Պոլսում։ Աբդիւլ Համիդ իր բոլոր ուազանին հրաւիրեց ժողովի, որ այն եզրակացութեան եկաւ, թէ այլ ևս անհընար էր զէնքի ոյժով արգելք լինել ռուսական բանակի մուտքին, բայց պէտք էր աղերսել, որ Ռուսաստանը ետ կենայ իր մտադրութիւնից, այլապէս ամբողջ հետևանքի համար նա պիտի մնար պատասխանատու։ Աբդիւլ Համիդ այնպէս վրդովուել

---

տօլիայում մի հայկական խնդիր ստեղծել։ Ռուսաստանի բուն նպատակը հայերին յոյս տալով նրանց օսմանեան իշխանութեան դէմ գրգռել էր»։ («Աբդիւլ Համիդի Սանի վէ դէվրը սալթանաթը». Կ. Պոլիս, Գ. հատ., էջ 818).

էր, որ մինչև իսկ ծրագրում էր Կ. Պոլիսը թողնել հեռանալ և Բրուսա տեղափոխուել, որպէս զի թշնամու ձեռքը գերի չընկնի։ Ռուսական կառավարութիւնը մահմեդական ամբոխի մոլեռանդութիւնը չգրգռելու համար պատշաճ գտաւ սուլթանի և Բ. Դրան խնդիրքն ընդունել և զօրք չմտցրեց Կ. Պոլիս։ Բայց դրա փոխարէն որոշուեց, որ բանակն աւելի մօտենայ մայրաքաղաքին և հաշտութեան բանակցութիւնները՝ փոխանակ Ադրիանուպօլսի՝ Սան-Ստէֆանօյում կատարուեն։ Թիւրք լիազօրներն այս ամբողջ ժամանակ Անգլիայի և Ռուսաստանի միջև մինչև իսկ պատերազմական ընդհարման սպասելով յոյս ունէին օգտուել դրանից լաւագոյն պայմաններ ձեռք բերելու համար, և այդ իսկ պատճառով շատ դանդաղ էին վարում հաշտութեան բանակցութիւնները։ Բայց երբ պատերազմի հաւանականութիւնը հեռացաւ, մանաւանդ երբ ռուսական բանակը Կ. Պոլսի դռների առջև իր վրանները կանգնեց, Իգնատիեվ պահանջեց արագացնել առանց որևէ այլ պատրուակների, և Թիւրք լիազօրներն ստիպուած եղան շուտով համաձայնութեան գալ։

Մեծ իշխանը փետրուար 14/26-ին հասաւ Սան-Ստէֆանօ և իջևանեց Տատեան Առաքել բէյի տունն, որ այնտեղի ամենամեծ և ամենայարմար բնակարանն էր և որն Առաքել բէյ դրել էր նրա կարգադրութեան տակ*)։ Սան-Ստէֆանօյում հայկական խնդրի պաշտպանութեան հոգն ընկնում է Խորէն եպ. Նար-Բէյի վրայ, որ, ինչպէս ինքը պատմում է, մօտ երկու շաբաթ Իգնատիեվի մօտ դեգերելով, շնորհիւ իր անձնական մօտիկ յարաբերութիւններին, կարողանում էր ազդել նրա վրայ**)։ Խորէն բնականաբար աշխատում էր, որ Նուբեան-Ասլանեանի Ադրիանուպօլսում ներկայացրած ծրագիրն, որ համապատասխան էր հոկտ. 21-ի ժողովի որոշման, ամբողջապէս իրականանայ։ Այս ծրագիրը նա ձևակերպում է այսպէս. «Ի նախագծի անդ յօդուածոյն, զոր առաջարկեալ էր մեր առ կոմս Իգնաթիեֆ, երկու ինչս եղեալ էր մեր ի կէտ նպատակի։ Առաջին՝ տալ ընդունիլ զանմիջական իշխանութիւն Առաքելական Աթոռոյն և Վեհ. Գահակալիդ (Գէորգ կաթողիկոսի) ի վերայ Տաճկաստանեայց Հայոցս, և Երկրորդ՝ ինքնավարութիւն

---

*) Տատեանի աղջիկը նոյնպէս միջնորդել է մեծ իշխանի մօտ, որ առաջիկայ դաշնագրում ի նպաստ հայոց յօդուած մտցուի։

**) «Զօյգ եօթնեակ մի առ նմա (Իգնատիեվի մօտ) դեգերեալ իմ, յաջողեցաք տալ մուծանել ի դաշնագրին զյօդ. 16-րդ»։ (Նար-Բէյի նամակը Պետերբուրգից Գէորգ կաթողիկոսին, 21 մարտ 1878 թ.)

Հայաստանի»*)…։ Թիւրք լիազօրները բացէ ի բաց մերժում են թէ մէկն և թէ միւսն՝ այս կէտերից։ Հայոց խնդիրը շատ մեծ դժուարութեան էր մատնուած։ Սան-Ստէֆանօ եկաւ նոյն նպատակով նաև Ներսէս պատրիարք և տեսնուեց Իգնատիեվի հետ, որ մի կերպ կարելի լինի դաշնագրական ոյժ տալ և պարզ որոշել Հայաստանի բարենորոգումների ձևը կամ էութիւնն, որ, ինչպէս գիտենք, հայոց բաղձանքի համեմատ ուղղակի վարչական ինքնավարութիւնն էր։ Բայց նա ևս չէ յաջողում։ Իգնատիեվ, ինչպէս հաղորդում է Նար-Բէյ, «չունենալով մասնաւոր հրաման ի կառավարութենէ իւրմէ պնդել եւ տալ ընդունիլ զմերս զայս աղերս, և միւսմէ կողմանէ ի քաղաքական հանգամանաց անտի գոլով ստիպեալ փութացուցանել զստորագրութիւն դաշնագրին, հարկ եղեւ բարեփոխել զայն և մուծանել ի կերպարանս առաջիկայ 16-դ յօդուածի**)։ Եւ այսպէս՝ մի կողմից Թիւրք լիազօրների բացարձակ ընդդիմութիւնը, միւս կողմից՝ ռուս լիազօրների Պետերբուրգից այդ մասին կտրուկ հրահանգ չստանալը, միևնոյն ժամանակ Անգլիայի սպառնալիքների շնորհիւ քաղաքական հանգամանքների բարդուելը՝ պատճառ դարձան, որ Իգնատիեվ ստիպուեց զիջել, և Հայաստանի ինքնավարութեան պայմանը վերցուեց մէջտեղից։ Չիրականացան հայոց տածած յոյսերը՝ չնայելով գործ դրուած իսկապէս մեծ ջանքերին։ Ռուսների պահանջմամբ՝ խաղաղութեան դաշնագիրը ստորագրուեց Սան-Ստէֆանօյում ճիշտ փետրուարի 19-ին (մարտի 3-ին), Ռուսաստանի ճորտերի ազատութեան օրն, որով, դիտաւորեալ զուգադիպութեամբ, դարձեալ նոյն օրն ազատութիւն էին գտնում միլիոնաւոր սլաւներ (բուլգարներ և սերբական ցեղին պատկանողներ) Թրքական բռնակալութիւնից։ Դաշնագիրը բաղկացած էր 29 յօդուածից, որոնց 16-դը վերաբերում էր Հայաստանին։ Ֆրանսերէն բնագիրն ասում էր.

«Comme l'évacuation, par les troupes russes, des territoires qu'elles occupent en Arménie et qui doivent être restitués à la Turquie, pourrait y donner lieu à des conflits et des complications préjudiciables aux bonnes relations des deux pays, la Sublime Porte s'engage à réaliser sans plus de retard les améliorations et les reformes exigées par les besoins locaux, dans les provinces habitées par les Arméniens et à garantir leur sécurité contre les Kurdes et les Circassiens„.

*) Անդ.

**) Անդ.

«Որովհետև ռուսական զօրքի՝ Հայաստանում գրաւած, բայց Թիւրքիային վերադարձուելիք տեղերից մեկնելը կարող է յառաջ բերել ընդհարումներ և շփոթութիւններ, որոնցից երկու երկիրների (Թիւրքիայի և Ռուսաստանի) լաւ յարաբերութիւնները պիտի վնասուէին, ուստի Բարձրագոյն Դուռը պարտաւորվում է հայերի բնակած նահանգներում անյապաղ իրականացնել տեղական պէտքերի պահանջած բարւոքումներն և բարենորոգումներն, և երաշխաւորել նրանց ապահովութիւնը քիւրդերի և չէրքէզների դէմ»։

Հայերի և Հայաստանի հետ մասամբ կապ ունեն նաև դաշնագրի հետևեալ կէտերը.

Յօդ. 25. «Ռուսական զօրքն Ասիական Թիւրքիայից պիտի հեռանայ 6 ամսի ընթացքում, վերջնական հաշտութիւնը կայանալու թուականից սկսած»։

և Յօդ. 27. «Բ. Դուռը պարտաւորվում է ոչ ինքը պատժել և ոչ էլ թողնել, որ ուրիշները պատժեն՝ այն օսմանեան հպատակներին, որոնք պատերազմի ժամանակ ռուսական բանակի հետ յարաբերութիւններ ունենալու պատճառով կասկածի տակ են գտնվում։ Եթէ ոմանք իրանց ընտանիքներով ռուսական զօրքին կցուելով երկրից (Թուրքիայից) հեռանալ ուզեն, օսմանեան իշխանութիւնները նրանց մեկնելուն պիտի չընդդիմանան»։

Այս վերջին պարբերութիւնն առանձնապէս կարևոր էր հայերի համար, որովհետև կային շատերն, որոնք, ենթադրելով թէ ռուսների գրաւումը վերջնական է և թիւրքերն այլ ևս չեն վերադառնայ, առանձին համակրանք էին ցոյց տուած և ծառայութիւններ էին մատուցած ռուսական բանակին*)։ Բացի

*) Զօրապետ Ստեփան Քիշմիշեան պատմում է, թէ ռուսական զօրքը Թրքական Հայաստան ոտք կոխեց թէ չէ՝ սիրով ընդունուեց հայ հովիւների կողմից։ Արշաւանքի երկրորդ օրն իսկ հայ հոգևորականութիւնը գոհաբանական աղօթք կատարեց ռուսական բանակի համար, որ գալիս էր հարստահարուած քրիստոնեաներին պաշտպանելու։ Հայերի ցոյց տուած բարեկամական տրամադրութիւնն այնքան մեծ էր, որ զօրքը կարծում էր, թէ իր հողի վրայ է գտնվում և ոչ թէ թշնամու։ Թէ ուտելիքի պաշար և թէ խոտ ու գարի՝ զօրքը գնում էր թղթադրամ վճարելով, և ոչ թէ ոսկի, ինչպէս Բուլղարիայում, որովհետև հայերը հաւատում էին։ Արդահանի գրաւումից վերջ ռուսական հրամանատարն իր արձակած ընդհանուր հրամանի մէջ զօրքին՝ ասում էր, թէ հայերն «արժանաւոր որդիք են իրանց հայրերի, որոնք շատ անգամ զոհուել են իրանց քրիստոնեայ եղբայրների համար»։ Այս համակրութիւնն, որքան որ հնարաւոր էր, հայերը ցոյց տուին ռուսական բանակին, մինչև պատերազմի վերջանալը...։ («Война въ Турецкой Арменіи 1877—1878 г. г.» генералъ С. О. Кишмишева, С. Петербургъ, 1884 г.).

դրանից, յիշելով այն դառն հալածանքը, ջարդն և բռնութիւններն, որոնց ենթարկուեցին մանաւանդ Բայազիդի, Ալաշկերտի և Բագրեւանդի հայերը թէ տեղական Թիւրքերից և թէ յատկապէս գազանաբարոյ քիւրդ վոհմակներից*), հայերից ոմանք, մանաւանդ ռուսական զօրքի երկրորդ արշաւանքի կարճատեւ տիրապետութեան ժամանակ, սկսել էին բնականաբար յոխորտալ իրանց բռնակալների և հալածողների վրայ։ Պէտք էր սպասել, որ ռուսների քաշուելուց յետոյ նոր կոտորած և հալածանք ըսկսուէր նոյն տեղերում հայերի դէմ։ Ուստի այս յօդուածով պահանջվում էր, որ Թիւրքաց զինուորական իշխանութիւնները խիստ միջոցներ ձեռք առնէին նրանց պաշտպանութեան համար։

Երբ յայտնի եղաւ Սան Ստէֆանոյի դաշնադրութեան՝ հայոց վերաբերեալ վերոյիշեալ 16-րդ յօդուածը, հայերը նախ դժգոհ մնացին, որովհետև իրանց յուսացած «ինքնավարութիւնը» չկար այնտեղ, բայց յետոյ այնու ամենայնիւ որոշ գոհունակութիւն և ուրախութիւն տիրեց նրանց վրայ, որովհետև՝ ինչպէս Նար-Բէյ գրում էր Գէորգ կաթողիկոսին՝ «ա) Անուն Հայաստանի պաշտօնապէս ընկալեալ եղև Օսմանեան պետութենէ. բ) Խոստացեալ եղեն և երաշխաւորեցան անմիջական բարեկարգութիւնք ի Հայաստան. գ) Բացաւ մեզ դուռն դիմելոյ առ կայսրութիւնն ռուսաց և առ այլս ի պետութեանց ի գործադրութիւն յօդուածոյ դաշնագրին ի Բ. Դռանէ»։ Ի հարկէ այս երեք կէտերն ևս իրօք քաջալերական էին՝ համեմատելով այն անյայտ և կղզիացած դիրքի հետ, որի մէջ գտնվում էր մինչև այն ժամանակ հայ ժողովուրդը, բայց բաղդատելով այն վիճակին, որ դաշնագիրը ստեղծում էր Եւրոպական Թիւրքիոյ քրիստոնեաների համար, շատ չնչին էին։ Իսկ հայերի ակնկալածն, ինչպէս գիտենք, այն էր, որ Հայաստանն ևս ստանայ ճիշտ այն առանձնաշնորհեալ դիրքն, ինչ որ Բուլգարիային էր յատկացուելու։ Այս կողմից էր, որ մեծ եղաւ յուսախաբութիւնը։ Դաշնագիրն ստորագրելուց յետոյ ռուսական լիազօրներն

---

*) Այս բռնութիւնները մանրամասն նկարագրել է «Թայմզի» յատուկ թղթակից Նօրման (C. B. Norman), «Armenia and the campaign of 1877», London, 1879, էջ 293—298։ Յառաջ են բերուած այս գրքում՝ գազանութեան սոսկալի դէպքեր, և թղթակիցն ասում է, թէ ինքը պատմում է միայն այն դէպքերն, որ ինքն անձամբ տեսել է կամ եւրոպացի վկաներից է լսել։ Այս գազանութիւնների և ջարդերի մասին մանրամասնութիւններ կան նաև «Կապոյտ Գրքի» մէջ, «Turkey» № 4 (1880), Captain Everett-ի տեղեկագրում, էջ 105—111, ուր յառաջ են բերուած վիճակագրական թուեր և կոտորած սարքողների առաջնորդների անունները։

իրանք ևս զգում էին, թէ չարդարացրին հայերի հաւատն և ակնկալութիւնն, ուստի նրանք աշխատում էին հայ պատուիրակներին մխիթարել և ոգևորել ապագայի յոյսով։ Թէ յօդուածի հեղինակը՝ կոմս Իգնատիեվ և թէ նրա մօտ գտնուած դիւանագիտական պաշտօնեաները՝ Գիրս, դը-Համբուրգէր և այլն, գրում է Նար-Բէյ, «ետուն ինձ յուսալ և յուսացուցանել զազգն թէ յապագային կարէ յօդուածն այն զկարևոր ընդլայնումն ստանալ, շատ է զի գիտասցուք յօգուտ ի կիր արկանել զհանգամանս, որ ելանեն և ելցեն մեզ ընդ առաջ ի լուծման անդ բազմակնճիռ խնդրոյն Արևելից, յողորմութեանց Բարձրելոյն Աստուծոյ»։

Ներսէս պատրիարք և իր խորհրդականների խումբն ևս ապագայի նկատմամբ այս յոյսի և այս լաւատեսութեան ազդեցութեան տակ էին գտնվում, որով և մխիթարվում էին, թէ նրանց ջանքերը գոնէ բոլորովին ի զուր չանցան։ «Հիմա տեարք պատուականք, — աւետում էր Ներսէս ուրախութեամբ, —... ալ մոռցուած չենք. ալ այն անհանդուրժելի սոսկալի մոռացումը վերջացաւ. հիմա «հայ ենք» ըսելու սկսան չամչնալ անոնք, որ կամչնային երբեմն...*)»։ Ներսէս ի հարկէ զգում էր, թէ իր ձեռնարկութիւնը չունեցաւ այն յաջողութիւնն, որին նա սպասում էր, և նա արդարանում էր ասելով. «Քաղաքականութեան մէջ երբ չես կրնար ընել ինչ որ կուզես, պէտք է ընես ինչ որ կրնաս». և ապա իր լաւատեսութիւնն աշխատում էր տարածել ազգային երեսփոխանների վրայ. «Այս յօդուածին ուժովը, — շարունակում է նա, — քիւրդերուն ու չէրքէզներուն հարստահարութեանց դէմ ապահովեալ էին հայք. իրենց տասը տարիէ ի վեր արձակած աղաղակը վերջապէս արձագանգ կը գտնէր ու մեր յանուն ազգին ներկայացուցած խնդրոյն մէկ մասը կը լուծուէր ըստ սկզբան, և համազգային իրաւանց կարգին մէջ կը մտնէր։ Այլ մեր ազգային խնդիրը՝ Արևելեան Ընդհանուր Խնդրոյն հետ նոր կերպարանք ու նշանակութիւն առած էր»**)։

Այժմ մօտից քննենք 16-դ յօդուածը։

Ինչպէս տեսնում ենք, շատ զգալի տարբերութիւն կայ Ադրիանուպօլսում խմբագրուած սկզբնական յօդուածի***) և Սան-Ստէֆանոյում ձևակերպուածի մէջ։ Այն ժամանակ, երբ առաջինը շատ որոշ կերպով պարտաւորեցնում էր Թիւրք

*) «Ատենագր. Ազգ. Ժողով.», 2 յունիսի 1878.

**) Անդ.

***) Ռուսճուգլեանի այս մասին տուած տեղեկութիւնը հաստատվում է Իզմիրլեանի՝ Գէորգ կաթողիկոսին գրած նամակով ևս։

կառավարութիւնը՝ «վարչական ինքնօրինութիւն տալ Կովկասի սահմանակից հայաբնակ գաւառներուն» այնպէս՝ ինչպէս խնդրել էին հայ պատուիրակներն, ընդհակառակն Սան-Ստեֆանօյում այս ամենաէական և որոշ կէտը—վարչական ինքնավարութիւնը — բոլորովին հանուած է և փոխարինուած է «տեղական պէտքերի պահանջած բարւոքումներն և բարենորոգումներն» առաձգական իմաստով։ Այստեղ սա է կարևորը, թէ ինչու Իգնատիեվ չկարողացաւ յաջողեցնել իր ծրագրած սկզբնական խմբագրութիւնն և չպնդեց, որ Հայաստանին—կամ «Կովկասի սահմանակից հայաբնակ գաւառներուն»—ևս վիճակուի այն քաղաքական ազատութիւնն, որին արժանանում էր Բուլգարիան։ Դրա պատասխանը տալիս է մեզ Նար-Բէյի նամակն, որ հաղորդում է, ինչպէս վերև յիշեցինք, թէ Պետերբուրգից կարգադրութիւն չկար, որ Իգնատիեվ պնդէ այս մասին...։ Ինչու չկար։ Որովհետև՝ 1) հայերն ոչ կրօնակից էին և ոչ էլ ցեղակից ռուսաց, հետևաբար չէին կարող նոյն համակրանքը գրաւել, ինչ որ ունէին բուլգարներն և սերբերը։ 2) Յայտնի էր արդէն, որ Ռուսաստանը զէնքի ուժի էր դիմել յատկապէս Եւրոպական Թիւրքիայի իր ցեղակից քրիստոնեաների ազատութեան համար։ 3) Հայաստանն այնպիսի աշխարհագրական դիրք ունէր, որ այնտեղ՝ ռուսական միջամտութեամբ ստեղծուած, ուրեմն՝ ռուսական հովանաւորութեան և ազդեցութեան տակ գտնուող հայկական ինքնավարութիւնը՝ Ռուսաստանի մշտական նախանձորդ Անգլիայի քաղաքական շահերի տեսակէտից, այն ժամանակի անգլ. պահպանողական կառավարութիւնն անթոյլատրելի էր համարում։ Խնդրի այս մասը մենք աւելի կը պարզենք, երբ կարգը գայ Կիպրոսի դաշնագրութեան մասին խօսելու։ Ահա գլխաւորապէս միմեանցից տարբեր այս նկատումների հիման վրայ էր, որ Պետերբուրգի կառավարութիւնը չպնդեց, թէ Հայաստանին ևս ինքնավարութիւն տրուի։ Ուրիշ բան էր, եթէ Թիւրքիան բուռն ընդդիմութիւն ցոյց չտար. այն ժամանակ խնդրի դժուարագոյն մասը կը վերանար։ Բայց Թիւրքի հոգեբանութիւնն ևս պէտք է հասկանալ։ Քրիստոնեայ ինքնավարութիւն երկրի եւրոպական մասում, և նոյնպիսի իշխանութիւն Փոքր Ասիայում բոլորովին տարբեր բաներ էին նրա համար։ Հայկական ինքնավարութիւնը՝ Հայաստանում, ուր հոծ մահմեդական բնակչութիւն կար, և որ շրջապատուած էր աւելի մեծ թուով մահմեդական ժողովրդով, ցանկալի չէր ոչ միայն Թիւրք կառավարութեան այլ և այդ այլացեղ և այլադաւան ժողովրդի համար։ Թիւրք կառավա-

րութեան համար՝ իր այդպիսի մի նահանգի տեղական ինքնավարութիւնը նախադուռն էր նրա կիսանկախ դրութեան, կամ հարևան մի մեծ պետութեան կողմից կլանուելուն, մանաւանդ երբ սա դաշնագրական որևէ իրաւունք էր ձեռք բերում այդ նահանգի վրայ։ Ինչ վերաբերում էր բարենորոգումներին, Բ. Դուռը պատրաստ էր այդ խոստանալ որչափ ուզուէր, միայն թէ նրանց գործադրութիւնն էլ իրանից կախուած լինէր...։

Սան Ստէֆանոյի 16-րդ յօդուածն երկու որոշ մաս ունի իր մէջ, որոնց առաջինը պատճառաբանական է և վերաբերում է երկու նոր հաշտութիւն կայացնող կողմերի փոխադարձ յարաբերութեան, իսկ երկրորդը հիմնական է և որոշում է կամ տնօրինում հայ ժողովրդի վիճակը։ Պատճառաբանական մասում հոգ էր տարվում, որ Թիւրքիայի և Ռուսաստանի լաւ յարաբերութիւնները չվնասուէին այնպիսի առիթներից, որոնք բարդութիւններ և կնճիռներ կարող էին յառաջ բերել։ Այս նըշանակում էր, թէ հայերի դէմ քիւրդերի և չէրքէզների ձեռքով նորից բռնութիւններ գործ դրուելը կամ հայերի հարստահարուելը՝ Ռուսաստանի համար դժգոհութեան առիթ պիտի համարուէր Թիւրքիայի դէմ։ Ուստի Թիւրք կառավարութիւնը պարտաւորվում էր այնպիսի միջոցներ ձեռք առնել, որ երկու երկիրների յարաբերութիւնները չվնասուէին։ Ահա այս «միջոցները» կազմում են յօդուածի հիմնական մասն, այսինքն բարենորոգումների անյապաղ գործադրութիւնն ի նպաստ հայոց։ Սակայն խնդրի թէ պատճառաբանական և թէ հիմնական մասերը կախուած էին այն երաշխաւորութիւնից, որ Ռուսաստան յուելեայն վերապահում էր իրան․ Երաշխաւորութիւն՝ թէ «բարւոքումներն և բարենորոգումներն» անյապաղ և անտարակոյս պիտի գործադրուէին։ Ո՞րն էր այս երաշխաւորութիւնը, քանի որ 16-րդ յօդուածը որևէ հսկողութեա՛ն իրաւունք չէր տալիս Ռուսաստանին։ Անշուշտ այն, որ ռուսական զօրքը պիտի մնար Հայաստանում, մինչև որ խոստացուած բարենորոգումներն իրականանային։ Այսպէս են հասկանում 16-րդ յօդ.-ի քողարկուած իմաստն եւրոպական պատմագիրներն, ինչպէս Ռօլէն Ժաքմէն*), Էնգէլհարտ**) և ուրիշներ։ Միւս կողմից՝ գիտենք արդէն, որ այս յօդուածը գրուած է Ասլանեանի և Նուրեանի ներկայացրած ծրագրի համաձայն, որ հիմնուած էր 1877 հոկտեմբեր 21-ի մասնաւոր ժողովում ընդունուած «բաղձանքների» Գ. կէտի վը-

*) «L'Arménie, les Arméniens et les Traités». Paris, 1887.
**) «Ta Turquie et le Tanzimat» II, Paris, 1884.

րայ, որտեղ բառ առ բառ ասուած էր. «Նիւթական երաշխաւորութիւն պահանջուի երկրին բարեկարգութեան և հպատակաց հաւասարութեան համար, ու այս երաշխաւորութիւնը լինի ռուսական զօրաց Հայաստանէն չելնելով»: Եւ վերջապէս՝ թէ իրօք այս էր Ռուսաստանի միտքն, հաստատվում է նաև նրանով, որ երբ Բերլինի կօնգրէսում այս յօդուածն սկսում է քննուել և անգլիական պատուիրակը պահանջում է հանել առաջին 3 տողերը (պատճառաբանական մասը), ռուսական պատուիրակը՝ կոմս Շուվալով նկատում է թէ՝ «եթէ ռուսաց զօրքը Հայաստանից մեկնի նախքան խոստացուած բարեփոխումների իրականանալը, կարող են այնտեղ լուրջ շփոթութիւններ ծագել»: Այս պնդումն և՛ս աւելի համոզում է անգլիական պատուիրակներին, թէ ռուսական զօրքի Հայաստանից մեկնումը պայմանաւորուած է բարենորոգումների գործադրութեամբ. և անգլօ-թրքական պահանջումով՝ այդ պայմանը դուրս է հանվում Բերլինի դաշնագրի 61-րդ յօդուածը կազմելու ժամանակ: Այս կերպով ռուսական երաշխաւորութիւնը փոխարինվում է ընդհանուր եւրոպական հսկողութեամբ, կամ աւելի ճիշտն՝ Անգլիայի պատասխանատըւութեամբ: Իսկ թէ ինչ արդիւնք է ունեցած այս փոփոխութիւնը, ահա թէ ինչ է ասում այս մասին անգլիացի մի բարձրաստիճան և հեղինակաւոր քննադատ, որ է ինքն՝ Արգայլի դուքսը: Ըստ երևոյթին այս փոփոխութիւնն իբր թէ աւելի նպաստաւոր պիտի լինէր հայերին, ասում է այս հեղինակը, «բայց եթէ մենք մտիկ տանք իրողութիւններին, որոնք ծածկուած են բառերի ետև, և այն պատճառներին, որոնք այս հարցում առիթ են ծառայել երկու պայմանադիր կողմերին*), պիտի տեսնենք, որ այս փոփոխութիւնը հայերի համար աղէտալից է եղած: Այս փոփոխութիւնը վիրաւորած է Ռուսաստանի հպարտութիւնն և իրաւացի փառասիրութիւնն, իսկ Թիւրքին հաճոյք է պատճառած...: Թիւրքն իսկոյն տեսաւ, թէ այս կերպով նա ազատվում էր Ռուսաստանի ճնշումից, որ վտանգաւոր էր իր համար, և դրա փոխարէն կրում էր այնպիսի ճնշում, որը նա կարող էր շատ դիւրութեամբ խաղացնել, անվերջ յետաձգելու մէջ իր ունեցած անսահման ճարպիկութեամբը: Ինչ վերաբերում է դժբախտ հայերին, այս փոփոխութիւնը՝ պարզապէս իրանց բռնակալների աւելի խիստ ատելութեանն էր ենթարկում նըրանց, երբ միևնոյն ժամանակ թուլացնում և վհատեցնում էր

---

*) Անգլիայի և Ռուսաստանի:

այն միակ պաշտպանութիւնն, որ հնարաւոր էր Հայաստանի անողոք աշխարհագրական պայմաններում...»*)։

Ահա ինչպէս են դատել նոյն իսկ լրջամիտ անգլիացիք՝ 1878-ին Անգլիայի պատուիրակների, յատկապէս լորդ Բիկընսֆիլդի խաղացած դերը, որի շնորհիւ է կատարուած այս «փոփոխութիւնը»...։

ՍԱՐՈՒԽԱՆ

(Կը շարունակուի)

---

*) « ur responsibilities for Turkey», by the Duke ot Argyll, London, 1896, էջ 72—74.

# ԳԱԲՐԻԷԼ ՔԱՀԱՆԱՅ ՊԱՏԿԱՆԵԱՆԻ
# ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆԸ *)

(1802—1882)

---

## Գ.

### *Ցոսէփ Նուիրէ զՋամչեանն*

*Հայր Միքայէլ Չամչեան 1784 Թուին տպագրութեամբ ի-
լոյս էր ընծայել հայոց երեքհատորեան պատմութիւնն, որ
Ներսէս տեսել և կարդացել էր տակաւին Պօլիս գտնուած ժա-
մանակն։ Այս երեք հատոր հայոց պատմութիւնն՝ Զաքարիա
պատրիարքն՝ երբ որ հաշտեցաւ՝ ընծայ ուղարկեց Ղուկաս կա-
թողիկոսին, որոյ գրագիր էր արդէն և խելքի բանալի՝ Աշտա-
րակեցի Ներսէս վարդապետն։ Սա երբ տեսաւ իր վաղածանօթ
հայոց պատմութեան հատորներն, միտքը բերեց՝ որ այն պատ-
մութեան մէջ կայր և Յոսէփայ անունն, բայց ո՛չ Իշխանազնեաց
Երկայնաբազուկ Արղութեանց, այլ Յոսէփ Մարկոսեան կոչուած,
և Էջմիածնի միաբանից ցոյց տուեց։ Յոսէփայ հակառակորդք-
յաղթանակի տօն կատարեցին, այլ Յոսէփայ կուսակիցք նամա-
կաւ իմացուցին Յոսէփին։ Այն ժամանակն Գրիգոր վարդապե-
տի ազգասիրութեամբ եկել էր Յոսէփի մօտ Զաքարիա պատ-
րիարքի աշակերտ Թադէոս վարդապետն Մարութեան, «քիթապ-
խուտան» մականունեալ, որ Նախիջևանից տպարանի հետ փոխա-
դրուել էր Աստրախան։ Այս Թադէոս վարդապետին հրամայեց
Յոսէփ գրել հ. Միքայէլ Չամչեանին, թէ «դու որ քո ժամանա-
կակից պատմութեան մէջ այդքան կոյր ես, որ չես տեսել, թէ
Ցոսէփ արքեպիսկոպոսն առաջնորդն Աստրախանայ է ի ցեղէն Ար-*

---

*) «Արօր» № 4.

դութեան Երկայնաբազուկ իշխանաց, Զաքարիա սպասալարի շառաւիղ, հին պատմութեանց մէջ արդեօք ի՞նչ աղաւաղութիւնք պիտի սպրդեցուցած լինիս»։ Զամչեանն հակառակ իւր գիտնական անուան՝ ևս առաւել պնդել էր իւր անզգամութեան մէջ, գրելով թէ՝ «կարաս դատարկ մեծամեծս հնչէ. Յոսէփ վեհ է իւր հիւղի մէջ, այսինքն Նոր-Նախիջևանայ Սուրբ Խաչ վանքի մէջ, իսկ այս կողմերն նորա անունն չէ լսուած։ Յոսէփ եթէ լինէր մեզ նման ոք, ունէր իրաւունք բարկանալ և բոլոր միաբանութեան վերայ յարձակիլ լուտանօք. այլ նա ազգասէր էր, և ազգի շահն կը խնդրէր»։ Մի նամակ գրեց հ. Միքայէլ Զամչեանին, որ Պոլիս գրավաճառ էր Մխիթարեան ուխտի, և մի նամակ բասենցի Յարութիւն արքեպիսկոպոսին, որ Թրեստ աստուածաբանութեան վարժապետ էր, ու հրաւիրեց, որ երկուքին ևս գան Աստրախան և ազգի լուսաւորութեան՝ անդ ծառայեն։ Հ. Միքայէլ Զամչեան գնաց Թրեստ և դէմ առ դէմ խօսեցաւ բասենցի Յարութիւն վարդապետի հետ, և երկուքին միասին մի նամակ գրեցին առ սրբազան Յոսէփ, թէ «եթէ կամիս, որ մեք վստահութեամբ գանք քո վիճակն, նախ ինքնդ հաշտուիր Ղուկաս կաթողիկոսի հետ, որ մենք գանք խաղաղութեան մէջ»։ Իսկոյն Յոսէփ մի մեղայական գիր ինքնաձեռագիր գրեց առ Ղուկաս կաթողիկոսն և մի նամակ՝ առ Ներսէս վարդապետն, որ նա միջնորդ լինի սրբազան հայրապետի առջև, որ հայոց կաթողիկոսն ընդունի զնա յորդիութիւն սուրբ Էջմիածնի։ Ի դիմաց Ղուկաս սրբազան հայրապետի՝ գրեց Յոսէփ արհւոյն պատասխան Ներսէս վարդապետն Շահազիզեանց Կամսարական, թէ «քո և Էջմիածնի մայրորդիութիւնն կախեալ կայ այն հանգամանքից, որ այդ Աստրախանայ վիճակն լինի ընդ հայրապետական իշխանութեամբ Էջմիածնի, և ոչ Գանձասարայ»։

Յոսէփ իսկոյն աղերս մատոյց կայսերուհւոյն դուռն և խնդրեց այդ հրովարտակն. բայց որովհետև տակաւին ինքնակալ կայսրուհին նոր էր ընկել իւր վերջին երկարատև հիւանդութեան մահիճն, վասն որոյ խոստումն եղև՝ որ երբ առողջանայ, իսկոյն այդ հրովարտակն շնորհէ Էջմիածնին։

Դեռ ևս յառաջ քան զայս՝ Ներսէս վարդապետն, որ հոգւով չափ գուն կը գործէր վնաս տալ Յոսէփայ ազգասիրական յառաջադիմութեանց, կամելով Հնդկաստանի ճանապարհներն փակել, որ Յոսէփ չկարողանայ իւր նուիրակունքն առաքել և անտի Նոր-Նախիջևանայ անուամբ հրիտակներ ստանալ, ուղարկել էր Հնդկաստան նուիրակ անուամբ Եփրեմ արքեպիսկոպոսին, որ Հնդկաստանի հրիտակաց ճանապարհներն փոխէ դէ-

պի Մայր Աթոռն Էջմիածնի, և Եփրեմ արհին յաջողել էր ամենայն ինչ ըստ կամաց Ներսիսի Աշտարակեցի վարդապետի Շահազիզեանց կատարել, և մեծապանծ ճոխութեամբ յետ էր դարձել Էջմիածին՝ 1794 թուին, և որպէս երթալոյ, նոյնպէս և յետդառնալոյ ժամանակն հանդիպելով Պօլիս՝ իջևանել էր տէր-Գաբրիէլ Պատկանեան ծերունւոյ տանն, և որպէս նորան, նոյնպէս և նորա որդւոյն՝ տէր-Պետրոս աւագ քահանային Պատկանեան, որ այն միջոցին կաթոլիկաց եկեղեցին էր երթևեկում, ծանօթացել էր, և գիտէր, որ տէր-Գաբրիէլի թոռն և տէր-Պետրոսի որդին է այն Սերոբէ Պատկանեանն, որոյ աղագաւ Հերակլ արքայն և Յովսէփ Արղութեան արհին՝ նամակաւ գրութիւն ենարել Շահ Ամիր-խանի հետ, երբ որ հասնում է Էջմիածին, ուղարկում է Սերոբէ Պատկանեանի համար Շահ Ամիր-խանէն ստացած պատիւներն, որ Ներսէս Շահազիզեանց համսարական վարդապետն ինքն է Էջմիածնի շաթրի ձեռօք ուղարկում, որ Սերոբէի Պատկանեանի սիրտն՝ Յովսէփից դարձուցանէ առ Ղուկաս կաթողիկոսն, որ կոնդակ տալոյ համար առատ էր, այլ նիւթական օգնութեան համար քան զչափն առաւել ժլատ։

---

## Դ.

## Աւեր Տփխիսոյ

Այն միջոցին որ Յովսէփ իւր աղերսագիրն մատուցել էր և սպասում էր կայսերուհւոյ առողջանալոյն, որ Էջմիածնի իրաւասութիւնն հաստատուի Աստրախանայ առաջնորդութեան վերայ, հասաւ 1795 ամն, և լսուեցաւ պարսից Ղաջարաց Աղա-Մահմադ-խանի շահութեան թեկնածութիւնն և արշաւելն Վրաստանի վերայ՝ առաջնորդութեամբ Գանձակայ իշխող Ջաւաթ խանի։ Տփխիսի բնակիչք ապաստանեցան իւրաքանչիւր թաքստեան տեղերն. Սերոբէ Պատկանեանն իւր կնոջ հետ նոյնպէս փախաւ դէպի լեռնակողմն։ Հերակլ արքայն երեսուն հազար լէկզի մեկնակաղէնք էր կոչել յօգնութիւնս և վրաց զօրաց հետ միասին գնաց ընդ առաջ թշնամւոյն։ Լէկզիք դեռ ևս չտեսած պարսից դրօշակաց վերայ ցցուած լուսիններն՝ երես դարձուցին ու փախան և Տփխիսից անցանելոյ ժամանակն շատ աւար յափշտակեցին։ Հերակլ մնաց միայն վրացի զօրօք և ճակատամարտ տր-

ւեց. վրացիք յաղթուեցան, Հերակլ փախաւ, նորա հրազինապետըն՝ Գաբրիէլ մայիօրն մատնուեցաւ պարսից ու թնդանօթի բերան կապուելով սպանուեցաւ սեպտ. 13-ին. քաղաքն առնուեցաւ և սրով և հրով և գերութեամբ աւերեցաւ։

Հայազգի գերեաց բազմութիւնն Ներսէս վարդապետի արութեամբ և Եփրեմ արքեպիսկոպոսի ճոխութեամբ, որք մի անգամ էին Երևանայ և Էջմիածնի կողմն, ազատուեցան, իսկ այլք տարուեցան մինչև ի խորին Պարսկաստան։

Յոսէփ լսելով պարսից արշաւումն՝ միջնորդել էր առ կայսերական գահն օգնութիւն հասուցանել Վրաստանին. և երբ կոմս Գուդովիչն սկսաւ տանել ռուսաց զօրքն դէպի Կովկաս, Յոսէփ ևս յարեցաւ ռուսաց բանակին. այլ երբ հասան Մոզդոկ՝ լսուեցաւ, որ քաղաքն Տփխիս արդէն առել են պարսիկք ու քանդել. Յոսէփ այլ ևս յառաջ չգնաց, իսկ Գուդովիչ սկսաւ Կովկասեան լերինքն անցանել յայնկոյս։ Պարսիկք երբ լսեցին ռուսաց զօրաց մերձենալն, թողին և փախան։ Տփխիսի բնակիչք վերադարձան։ Հերակլ արքայն հրամայեց, որ Սերոբէ Պատկանեանին գտնեն. խէլթուբանցի տէր-Մոսէսն Աբուզաւրեան գտաւ մի քարայրի մէջ, ուր այր և կին գտել էին ապահով ապաստանի, և բերեց Տփխիս։ Հերակլ արքայն իսկոյն նորոգել տուեց նորա մանկավարժարանն, Փիթոյեանց Աղայի տանըն, և նորա ռոճիկն բերել տուեց։

---

## Ն.

## Յոսէփայ մահն ի Տփխիս

Աշտարակեցի Ներսէս վարդապետն Շահազիզեանց, տեսանելով թէ կայսերական հրովարտակն յապաղեցաւ, կարծեց, թէ Յոսէփ կամ խաբեց, կամ միտքն փոխեց, սկսաւ Ղուկաս կաթողիկոսին գրել տալ առ Յոհաննէս աղա Լազարեանն գանգատ Յոսէփէն։ Յոհաննէս աղայն գրեց և արդարացոյց Յոսէփին՝ հրովարտակի յամեցման պատճառն դնելով կայսերուհւոյ հիւանդութիւնն։ Ներսէս թոյլ չտուեց, որ Ղուկաս կաթողիկոս հաւատայ Լազարեան իշխանի ջատագովութեան, գրեց Յոսէփին, թէ «եթէ ուղիղ է քո դարձն, թոյլ տուր, որ մի եպիսկոպոս գայ ու նստի Աստրախան»։ Այն ժամանակն Յոսէփ արդէն զզուել էր

Ներսիսի մեքենաներիցն ու հրամայեց, որ գայ եպիսկոպոսն։ Ներսէս տուեց Եփրեմի ձեռքն մի կոնդակ, որ այն կոնդակի զօրութեամբ Եփրեմ ունենայ իշխանութիւն երթալ կայսերուհւոյ առեան՝ բողոքել Յոսէփի ապստամբութեան դէմ, առնուլ Յոսէփի ձեռքէն առաջնորդութիւնն և Նոր-Նախիջևանայ եկեղեցեաց ճոխութիւնն, և Յոսէփին և Գրիգոր վարդապետին կապեալ ձեռօք և կապեալ ոտիւք հասուցանել յէջմիածին, և ինքն լինել Աստրախանայ առաջնորդ և Ղուկասու անունն յիշել տալ քարոզից մէջ և ի ժամ սուրբ պատարագին։

Թէպէտ այս ամենայն Ներսէս պատրաստում էր յոյժ գաղտնածածուկ, բայց Յոսէփայ կուսակիցք իմանում էին և գրով իմացումն էին տալիս Յոսէփին։ Յոսէփ ուղարկեց Գրիգոր վարդապետին Զաքարեան ընդ առաջ Եփրեմի, որ ընդունի որպէս իւր եպիսկոպոս և պատւով հասուցանէ Աստրախան։

Եփրեմ կոնդակն ձեռին եկաւ Տփխիս իւր հետ ունելով մի վարդապետ Ստեփանոս անունով (որ յետ ժամանակաց կոչուեցաւ «կաւալէր Ստեփանոս վարդապետ»), Տփխիսի մէջ գտաւ Սերոբէ վարժապետ Պատկանեանին և՝ նորա հեզութիւնն ու պարկեշտ վարքն տեսանելով՝ սիրեց և Հնդկաստանէն բերած Շահ Ամիր-խանի պարգևն (250 Հոլանդայի ոսկի) հասոյց նորա ձեռքն և ինքն անցաւ գնաց դէպի Ռուսաստան, հանդիպեցաւ Գրիգոր վարդապետին, որ մեծաւ պատուով տարաւ հասոյց Աստրախան։

Եփրեմ խակ մարդ չէր. Սիմէօն կաթողիկոսի դաստիարակութեան մէջ էր ճախարակուած. բայց ոչ Յոսէփի փառացի ու ահեղ կերպարանքն և ձայնն ունէր, ոչ Գրիգորի ճապուկ ճարպկութիւնն. այն ժամանակն՝ Յոսէփիցն երկրորդն էր Էջմիածնի արհեաց մէջ. եթէ Ներսէս պատճառ չդառնայր, Եփրեմ չէր բնաւ ցանկայր Յոսէփի դէմ վէգ մտանել. նա խաղաղասէր և խոհական անձն էր. նա առաւել բնաւ չէր կամենայր հայոց արքեպիսկոպոսի անունն և գործն առակ նշաւակի անել։ Յոսէփ վաղածանօթ էր Եփրեմին, խօսեցաւ եղբայրաբար և ասաց. «Դու ու ես միօրինակ որդիք եմք Էջմիածնի, միոյ հայրապետութեան պաշտօնեայք սրբութեան. այս օտար աշխարհի մէջ որպէս ես, նոյնպէս և դու՝ պանդուխտ եմք. մեր եկեղեցւոյ օգուտըն այն է, որ միմեանց օգնական լինենք և ոչ հակառակորդ. ժողովրդեան բարի օրինակ լինենք և ոչ գայթակղութեան. ես խոստացել էի մի եպիսկոպոս ընդունիլ, ու ոչ սուսերօք և բըրովք զինեալ աւազակապետ, որ եկել է կապել զհօրն, և ըզտունն նորա յաւարի առնուլ. ոչ այդպէս. ես սկսայ խոնարհու-

թիւն ցոյց տալ Ղուկաս կաթողիկոսին և Ներսէս վարդապետին ոչ վասն այն, որ ես նոցա շնորհաց կարօտիմ, այլ վասն այն, որ մեր հաշտութիւնն կարող էր բանալ դուռն և այլ մեծի հաշտութեան, որով Մխիթարեան ուխտն կարող էր վերադառնալ ի ծոց սուրբ Էջմիածնի։ Եփրեմ հայր, քեզ հաճոյ երևեցաւ Զաքարիա արհւոյ արածն, որ Սիմէօնի տօնացոյցն չէ ընդունած. այլ ես ընդունեցի. մինթէ չէի՞ կարող պօլսեցւոց նման ես և հերքել։ Տեսա՞ր՝ թէ Աբբայեցիք որքան պինդ բռնեցին հին տօնացոյցն, որ ազգի երկպառակութիւնն ամուր մնայ։ Եթէ մենք մի խռովութիւն հանենք՝ ազգն նոր ի նորոյ մի այլ պատառուած պիտի ստանայ։ Ձէ, Յոսէփ այդ վրիպանաց մէջ չի գլորիր։ Դու չգետես. բայց ահա քեզ ես եմ առաջին աւետիս տըւողն. քո բերած կոնդակն և քո բերած միւռոնն և որքան նամականի ունէիր, Գրիգոր վարդապետն տակաւին Մոզդոկ էր ձեռք ձգել և ինձ հասուցել. դու միայնակ ես յԵրուսաղէմ, որ չգիտես, թէ տակաւին Աստրախանայ վիճակն կաթողիկոս չունի. ես Գանձասարայ կաթողիկոսի իշխանութիւնն մերժեցի, և Էջմիածնի հրովարտակն տակաւին չէ ստորագրուել»։ Այսպէս Եփրեմ մնաց մինչև ի 1800 թուականն առանց պարանի կապեալ։

Ներսէս վարդապետն մի սխալ արել էր Եփրեմին Ռուսաստան ուղարկելով, և՝ ձախորդութեան վրէժն կամելով հանել՝ այն գրուածքն, որ Յոսէփ արել էր հ. Միքայէլ Ջամչեանի և բասենցի Յարութիւն վարդապետի հետ, և իսկական նամակներն ուղարկել էր Ղուկաս կաթողիկոսի ձեռքն. այս նամակաց պատճէնքն Ղուկաս կաթողիկոսի ձեռագրութեամբ փոքրացուցեալ և հայրապետական կնքով դրոշմեալ ուղարկեց Պօլիս այնպիսի անձանց ձեռքն, որ նոյն ժամայն հասուցին ուր հարկն էր. և այնուհետև ոչ Յոսէփ և ոչ այլ ոք կարէր յուսալ՝ թէ այն ազգասիրական խորհուրդն օր մի պիտի իրագործի։ Բայց ինչպէս եղաւ Ներսէս վարդապետի և Ղուկաս կաթողիկոսի զղջումըն, երբ որ կայսրուհին վախճանեցաւ, ու նորա ժառանգորդին՝ Պօղոս Ա.՝ բազմեցաւ կայսրարքայական աթոռն, ու Յոսէփայ աղերսեալ հրովարտակն հրատարակուեցաւ, որով Սուրբ Էջմիածին մտաւ ընդ պաշտպանութեամբ կայսերութեան, և Աստրախանայ առաջնորդութիւնն յանձնուեցաւ Սուրբ Էջմիածնի հայրապետական գաւազանին, և քարոզից մէջ լռուեցաւ Ղուկաս կաթողիկոսի անունն թէ պատարագի և թէ այլ ժամերգութեան ընթացքում։

Ղուկաս կաթողիկոսն առ Աստուած փոխեցաւ զկնի քսանամեայ հայրապետութեան։ Յոսէփ ռուսաց ինքնակալութեան

զօրութեամբ վանեց ամեն հակառակութիւն և ընտրուեցաւ կաթողիկոս. Եփրեմ ստացաւ էջմիածնեան միաբանից բազմաստորագիր նամակն (տակաւին սինոդի անուն չկայր հայոց մէջ) և, որպէս հրաւիրակ ի դիմաց Էջմիածնի, կանգնեցաւ յատենի նորընտիր հայրապետի և հրապարակաւ Աստրախան քաղաքի սուրբ Աստուածածնի աւագ եկեղեցւոյ մէջ ասաց, որ «ընտրեցեր և ընկալար զերանելի և զերջանիկ հայրապետն մեր Յոսէփ» և այլն: Եւ Յոսէփ իսկոյն տուեց Եփրեմին գաւազան և ասաց. «Մինչև ես երթամ Էջմիածին, օծուիմ կաթողիկոս ու ձեռնադրեմ Գրիգոր վարդապետին եպիսկոպոս և ուղարկեմ Աստրախան, որ լինի Ռուսաստանի հայոց առաջնորդ, դու ես այստեղի առաջնորդն: Իսկ երբ Գրիգոր գայ այս քաղաք արքեպիսկոպոսական իշխանութեամբ, այս գաւազանն պիտի յանձնես նորան, և ինքդ պիտի վերադառնաս Էջմիածին, որ ինձ պիտոյանաս Էջմիածնի մէջ. ես կամենում եմ քեզ միւս անգամ յանձնել Հնդկաստանի այցելութիւնն»: Ասաց և յուղի անկաւ դէպի Տըփխիս, իսկ Գրիգոր վարդապետին հրամայեց, որ իւր աղխն, որոյ մէջ կային Յոսէփի ամենայն ճոխութիւնքն, ընդ որս և Նոր-Նախիջևանայ եկեղեցեաց գանձն, հասուցանէ Էջմիածին, և ինքըն ձեռնադրութիւն ստանալով՝ վերադառնայ ստանալ Ռուսաստանի հայոց առաջնորդութիւնն:

Եփրեմ արհին՝ որ իւր Աստրախան մտած օրէն սկսեալ Յոսէփայ ամենայն քայլափոխն զննում էր և գրով ծանուցանում էր Ներսիսին, այս իւր նոր ստացած առաջնորդութեան լուրն ևս գրեց, և ընդ նմին ծանոյց Յոսէփայ ուղևորութիւնն դէպ ի Տփխիս: Ներսէս երբ Եփրեմի այս վերջին նամակն ստացաւ, մի նամակ գրեց Տփխիս Սերոբէ վարժապետ Պատկանեանին ու մէջն դնելով երկու հարիւր հոլանդական ոսկի, խնդրեց, որ Յոսէփի աղագաւ ինչ լուր ստանայ, գրով ծանուցանէ, և երբ Յոսէփ հասնի Տփխիս, նորա ամենայն շարժմունքն զննէ և գրէ: Այդ գործոց աղագաւ Տփխիս Ներսիսի ռոճկով կը բնակէր երևանցի Աւագ Վահրամեանն, որ այս նամակն հասոյց Սերոբէ Պատկանեանին: Եւ յիրաւի երբ լսուեցաւ, թէ Յոսէփ հասել է Մոզդոկ, Սերոբէ Պատկանեանն գրեց նամակ առ Ներսէս և յանձնեց Աւագ Վահրամեանին հասուցանել առ Ներսէս յԷջմիածին: Վերջապէս Յոսէփ հասաւ Տփխիս, ընդ իւր ունելով բազմութիւն եպիսկոպոսաց, վարդապետաց, քահանայից և սարկաւագաց, որոց մէջ երևելի էր իւր սիրական տիրացու Իլիզբարն, որոյ քաղցրաձայն երգեցողութիւնն նման էր հրեշտակային նուագերգութեան: Երբ մտաւ վիրաց դուռն, իսկոյն

հարցուց առաջնորդէն, թէ ուր է Սերոբէ Պատկանեանն։ Սերոբէ Պատկանեանն կայր ի մէջ հոգևորականաց՝ եկեղեցական շապկով. երբ յառաջ եկաւ և աջն համբուրեց, Յուսէփ իւր ահեղ բարբառով ասաց. «Դու ես իմ գաւազանակիրն. որքան ժամանակ այստեղ մնամ, միշտ պիտի աչացս առջև լինես». և իւր գաւազանն տուեց տանիլ առջևէն, տիրացու Էլիզբարի ձեռքէն առնելով։

Երբ Յուսէփ հիւանդացաւ և մահու վտանգն յայտնեցաւ, քաղաքի առաջաւորքն հայոց ժողովեցան նորա վերջին օրհնութիւնն առնուլ, և համախումբ կային շուրջ զմահճօքն։ Իշխանք հարցուցին. «Հայր, գնում ես անդառնալի ճանապարհն, զաւակներդ ում ես յանձնում»։ Հիւանդն հոգւոց հանելով պատասխանեց. «Աստուծոյ եմ յանձնում. կայ Դանիէլ, կայ Դաւիթ. բայց լաւ է որ ընտրուի Դա...». և հոգին աւանդեց։ Իսկոյն Սերոբէ Պատկանեանն գրեց և յանձնեց նամակն Աւագ Վահրամեանին։ Ներսէս այս նամակն ստանալով իսկոյն ընտրել տուեց Դանիէլին և հրաւիրակներ ուղարկեց։ Այս էր 1800 թիւն։

(Կը շարունակուի)

# ԿՈՄՍ ԼԷՎ ՆԻԿՈԼԱԵՒԻՉ ՏՈԼՍՏՈՅ *)

*(Ստեղծագործութեան խարակտերիստիկայի փորձ*

Ի՞նչ աղբիւրներ էին դրանք։ Դրանց կարելի է բաժանել երկու գլխաւոր մասերի՝ ժողովրդական և ազգային աղբիւրների։ Հէնց ստեղծագործական թափանցումը այդ գաղափարների նուիրական խորութեան մէջ՝ ի վերջոյ պէտք է տար Տոլստոյի վեհ սինթէզները։ Դեռ «Казаки» գրուածքում Օլենինը, նպատակ դնելով իր առջև՝ ապրել իր գտած նոր բարոյական օրէնքի համաձայն (սէր, անձնուիրութիւն), վճռում է հետևել «ռամկանալու» գաղափարին, որպէս զի այդ ճանապարհով իրականացնի կեանքում այն ամենը, ինչ որ գտել էր նա իր որոնումների ժամանակ։ «Ռամկացումը», ինչպէս մենք գիտենք, Օլենինին գցում է Կովկասի հեռաւոր ստանիցը, որտեղ նա գտնում է հոգեկան տարբեր կառուցուածքով մարդկանց՝ կազակներին։ Կովկասի կազակները՝ դրանք ռուս ժողովրդի ազատագրական այն տարրի ծառայողներն են, որը անկարող լինելով հաշտուել ռուսական կեանքի պատմական պայմանների հետ՝ հեռացաւ օտար երկիրներ։ Շնորհիւ այդ հանգամանքի, այս տարրը ապրեց կենտրոնում գոյութիւն ունեցող սովորական պատմական և էվօլիւցիօն պրօցէսսից դուրս, ուստի և անաղարտ և մաքուր պահեց իր մէջ ժողովրդական գծերը, օտար մնալով ազգային գծերին, որոնք մշակվում են յատկապէս կեանքի միևնոյն պայմանների մէջ ապրող ժողովրդի մշտական ստեղծագործական պրօցէսսում։ Ժողովրդականութեան գաղափարը առաւել լայն ու խորն է, քան ազգայինը, որովհետև ժողովրդականութիւնը ընդգրկում է այն համապարփակ ձևը, որի բովանդակութիւնն է կազմում ազգութիւնը և նրա մէջ թագնուած ազգութեան պրօվինցիալ նպատակը. և վերջինը իր ապագայ կենսունա-

---

*) «Արօր» № 4.

կութեան և գործունէութեան կարելիութիւնը ստանում է այն ույժերից, որոնք թագնուած են ժողովրդականութեան մէջ։ Օլենինը, ապա ուրեմն և Տօլստօյը, բնակութիւն հաստատելով ստանիցայում՝ գտնում է այդ պրօվիդենցիալ նպատակը և որոշում ռուս ժողովրդի ապագայ պրօգրէսի այն գիծը, որը ընդգծուած է իր տեսակէտից ժողովրդի մէջ դրուած բնորոշ տարրերով ու ույժերով։ Ընդհանրապէս անհրաժեշտ է ընդգծել, որ ընդհանուր բարոյական օրէնքի անընդհատ որոնումների մէջ Տօլստօյը, ըստ երևոյթին, ղեկավարուելիս է եղել այն գաղափարով, թէ բարոյական բարձր ճշմարտութիւնը—համամարդկային օրէնքը—գոյութիւն ունի հէնց իր մէջ, բայց մի անգամից գտնել այն՝ անհնարին է, որովհետև նա չափազանց խորն է թաղուած շնորհիւ պատմական շերտաւորումների, միջավայրի կուլտուրայի․ և ինչպէս որ, մի կողմից, նա ձգտում է ազատուելու այդ շերտաւորումներից՝ այդ գերագոյն օրէնքը գտնելու համար, այնպէս էլ՝ միւս կողմից՝ նա ձգտում է մօտենալ ժողովրդին, լսել նրան, որովհետև ժողովրդի հոգեկան աշխարհում, որը տակաւին չէր ծանրաբեռնուած շերտաւորումների այդ գանգուածով, այդ ճշմարտութիւնը, այդ գերագոյն օրէնքը պէտք է որ պահպանուած լինէր հէնց մակերևոյթի վրայ։ Այսպէս ուրեմն՝ այս դէպքումն էլ ինքնազննութիւնը, ստեղծագործական ինդուկցիան պէտք է խաղային և խաղացին վճռողական դեր, իսկ «գիւտ»-ի հետևանքները ստուգուեցին այն տիպերի վրայ, որ Տօլստօյը գտաւ ստանիցայի մէջ։ Դրանց մէջ կենտրօնական տեղը պատկանում է Քեռի-Երօշկային։ Քեռի-Երօշկան Տօլստօյի համար մարմնացումն է ժողովրդականութեան այն գծի, որը նա գտնում է նաև իր մէջ․ դա՝ բոլոր ժողովուրդների համար մի ընդհանուր բարոյական օրէնքի որոնումն է և ապա՝ նրան ընդհանուր սիրոյ մէջ գտնելը։ Չնայելով հնածխական միջավայրի այն սահմանափակ հասկացողութիւններին, որոնց մէջ ապրում էր Քեռի-Երօշկան, չնայելով և այդ միջավայրի մոլեռանդութեանը, այնուամենայնիւ վերջինս, հրաժարուելով այդ հասկացողութիւններից, քննադատական վերլուծումների շնորհիւ հասնում է արմատապէս հակադիր եզրակացութիւնների այն ամենի նկատմամբ, որ սովորեցրել էին նրան «կանոնագրողները»։ «Կանոնագրողները,—մտածում է Քեռի-Երօշկան,—սովորեցնում են, որ չէ կարելի յարաբերութիւն ունենալ այլ դաւանութեան պատկանող մարդկանց հետ, չէ կարելի ոչ խմել, ոչ ուտել նրանց հետ, ապա թէ ոչ՝ միւս աշխարհում ստիպուած կը լինես «թաւա լիզել»․ բայց չէ՞ որ մահմեդականն էլ է շեշտում

միևնոյնը խօզի միս ուտողներին. հետևաբար այստեղ մի ինչ-որ բան պակաս է, և այն հանգամանքը, որ զանազան ժողովուրդների և նոյն իսկ միևնոյն ժողովրդի զանազան խմբերը տարբեր պահանջներ ունեն հաւատքի շրջանում, նրան համոզում են, թէ այդ ամենը կեղծիք է, որ ճշմարտութիւնը այդ արտաքին հրահանգների մէջ չէ, այլ միանգամայն ուրիշ բանի մէջ: Այդ «ուրիշը» քեռի-Եռօշկան ձևակերպում է որպէս օրէնք ներքին խղճի, որը պէտք է ժխտի արտաքին բոլոր ձևական ճշմարտութիւնները՝ աղանդից, ուսմունքից, եկեղեցուց և նման բաներից բղխող: Բայց թէ ինչ են ներկայացնում այդ խղճի հրահանգները՝ դա երևում է Օլենինի՝ քեռի-Եռօշկային տուած այն հարցից, թէ սպանե՞լ է արդեօք նա երբևիցէ մարդու: Եռօշկան պատասխանում է. «Սատանայ, մարդ սպանելը ծանր բան է, շատ ծանր»: Այդպիսով քեռի-Եռօշկան Տօլստոյի համար որոշում է ժողովրդականութեան այն գիծը, որը կարելի է ձևակերպել իբրև անընդհատ որոնումն բարոյական ճշմարտութեան և իբրև մշտավառ հոգեկան կարօտութեան, որը ուղեկցում է ռուս ժողովրդին իր որոնումների մէջ: Բայց ժողովրդականութեան գաղափարի ըմբռնումը բաւական չէր. ինքնազատման պրոցէսսում Տօլստոյը պէտք է թափանցի նաև ազգայնութեան գաղափարի խորքը, որի մէջ ժողովրդական ոգին գտնում է իր առօրեայ կեանքի արտայայտութիւնների իրականացումը: Եւ այդ թափանցումը տեղի ունեցաւ երկու տիպերի «գիւտ»-ի մէջ՝ Պլատօն Կարատաեվի և Կարուզովի մէջ («Война и Миръ»):

Պլատօն Կարատաեվը «Война и Миръ» վէպի մի զինուոր է, որը տիրապետում է ուրիշներին դէպի ինքը գրաւելու մի առանձին ընդունակութեամբ՝ շնորհիւ իր առանձնայատուկ մեղմութեան և կարեկից լինելուն: Այդ տիպը ստեղծելիս Տօլստոյը ի նկատի է ունեցել ազգայնութեան գաղափարը իր մաքուր դրութեամբ, որը իր մէջ թագցնում է յատկապէս մուժիկական կենցաղի և սովորութեան գծերը, որոնք միացած են համազգային գծերով: Հէնց այն մեղմութիւնը, որի մասին մենք վերը շեշտեցինք, կազմում է ոչ թէ Կարատաեվի բնաւորութեան մի գիծը, այլ նրա յատկութիւնը, որովհետև նա հէնց միակերպ գոյներով է արտայայտվում թէ դէպի մարդը (Պիեռ Բեզուխիյ) և թէ դէպի կենդանին (բարակի—баракъ—շունը): Միևնոյն Կարատաեվը, որ բնազդմամբ շփոթում է գիւղացի և քրիստոնեայ (крестьянинъ и христіанинъ) գաղափարները, իր վարմունքների և գործողութիւնների մէջ ղեկավարվում ու տար-

վում է երևոյթների այն կողմով, որին քննադատութիւնը բնորոշում է որպէս բարեձեւութիւն. տարվում է և գործողութիւնների այն հեզութեամբ ու գեղեցկութեամբ, որը կազմում է աւետարանական ասացուածքների բնորոշ առանձնայատկութիւնը։ Իր այն պատմութեան մէջ, թէ ինչպէս ուրիշի անտառում փայտ կտրելիս իրան ծեծել են, տանջել ու վերջապէս տուել են զինուորութեան և թէ ինչ դուրս եկաւ դրանից, ահա այդտեղ Պլատոն Կարատաեվը ամբողջովին պաշարուած է դէպքի արտաքին աւետարանական գեղեցկութեամբ. «մտածում էին, թէ վատ կը լինի, բայց չէ. աւելի լաւ եղաւ»—ասում է նա։ Իսկ եթէ Պլատոնին զինուոր չտային, այն ժամանակ զինուոր կը գնար նրա եղբայր Միքայէլը, որը հինգ զաւակ ունէր։ Եւ ապա, երբ Պլատոնը վերադարձաւ տուն, նա ուրախանալ չկարողացաւ. տունը լիառատ է, ապրում են բաւարարութեան և լիութեան մէջ. իսկ հայրը յանկարծ պատուիրում է կանչել բոլորին, որպէս զի նրանք խոնարհուեն ընտանիքի ազատարարի, այն է՝ Պլատոնի առաջ։ Սակայն բացի այն «բարեձևութիւնից», որով ոգեւորվում է Պլատոնը այդ պատմութեան միջոցին, վերջինս հնարաւորութիւն է տալիս դուրս բերելու չափազանց բնորոշ եզրափակումներ Պլատոնի նկատմամբ մասնաւորապէս և ազգայնական գծերի՝ ընդհանրապէս։ Պատմութեան սկզբում Պլատոնը արտայայտում է իր ընդհանուր կարծիքը աշխարհակարգի (міропорядокъ) մասին, թէ «ճակատագիրը գլուխներ է որոնում», իսկ վերջում արտայայտում է այն անխախտ հաւատը, թէ ինչ էլ որ տեղի ունենայ, տեղի է ունենում լաւի համար։ Այդ երկու ենթադրութիւնները արդէն անջատում են Կարատաեվին իր յատուկ գիւղացիական հասկացողութիւններից և գաղափարներից և մտցնում նրան այն հասկացողութիւնների շրջանը, որոնք, ըստ վկայութեան Տոլստոյի, յատուկ են ամբողջ ռուս ժողովրդին. դրանցով Կարատաեվը մօտենում է Կուտուզովին՝ այդ ազգային հերոսին։ «Ճակատագիրը գլուխներ է որոնում» դարձուածքը ցոյց է տալիս, որ Կարատաեվի մէջ միանգամայն որոշ կերպով առկայծուել է կեանքի պրոցէսի օրինաւորութեան և նպատակայարմարութեան մասին միտքը, առկայծուել է միտքը և այն մասին, թէ այս կեանքում կատարուող ամէն ինչ ենթակայ է պատճառակցութեան մի յայտնի օրէնքի. նոյն կերպ առկայծվում է այն միտքը, թէ իր ապագայ կեանքը կանխորոշող կենսական պայմանի նկատմամբ ևս գործել է մի այլ, առաւել բարձր օրէնք, որի համեմատութեամբ մարդու անհատական կամքն ու գիտակցական գործունէութիւ-

նը ոչնչութիւն են։ Այս աշխարհահայեցողութիւնը կարելի է բնորոշել որպէս մի ֆատալիզմ, որպէս մի հայեացք մարդու դերի նկատմամբ կեանքի մէջ։ Սակայն դրանից յետոյ անմիջապէս Կարատաեվը յայտնում է այն համոզմունքը, թէ ամեն ինչ տանում է դէպի լաւը, ըստ որում և ցոյց է տալիս ամենահաստատ, ծայրայեղ օպտիմիզմ՝ կենսական գործողութիւնների մէջ և ոչ մի վատ վախճան չընդունող. և ահա այս երկու գծերով— կեանքի նկատմամբ ֆատալիստիկ հայեացքով, իսկ վախճանի՝ լաւատես—օժտել է Տօլստոյը իր ազգային հերոսին՝ Կուտուզովին, ստիպելով մեզ ևս ընդունել այդ գծերը իբրև ազգային։ Անհրաժեշտ է յիշել Կուտուզովի խօսքերը Բոլկոնսկիին՝ ժամանակի և համբերութեան մասին։ Բորոդինի կռուի պատկերը, որտեղ Կուտուզովին իր «անգործութեան» հետ միասին՝ հակադրուած է Նապոլէոնը, որը փորձում էր իր միջամտութեամբ փոխել անցքերի ընթացքը. բաւական է յիշել նոյնպէս Կուտուզովի հաւատը, թէ ամեն ինչ աջող ելք կունենայ, որպէս զի կարելի լինի համոզուել, վերևում ասածներիս ճշմարտութեան մէջ։ Այդպէս՝ ազգայնութեան պսիխիկայի մէջ խորասուզումը՝ Տօլստոյին հասցնում է այն համոզման, թէ գոյութիւն ունի մի գերագոյն ույժ, որը ղեկավարում է մարդուն նրա գիտակցական գործունէութիւնից դուրս, հասցնում է լաւատեսութեան գաղափարին, եւ որ այն ամենը՝ ինչ կատարվում է՝ տանում է դէպի լաւը։

Սրանից պարզվում է, որ Տօլստոյին ինքնազատման պրոցէսին հասցնող սկզբնական աղբիւրը ժողովրդական հոգեբանութիւնն է։ Մենք տեսնում ենք, թէ ինչպէս Տօլստոյի մէջ նկատուած աստուածային կայծը բոցավառվում է, դառնում մի մեծ կրակ, թէ ինչպէս բոլոր շերտաւորումները, որոնք քաղաքակրթութեան, հասարակութեան և միջավայրի շնորհիւ ծածկել էին այդ կայծը, դէն են գցվում, և Տօլստոյը, որպէս առասպելական Անտէյը չար ույժերի հետ մղած կռւում,—թէ իր մէջ և թէ իրանից դուրս,—երկրի հետ ունեցած իւրաքանչիւր շփման միջոցին հաւաքում էր իր մէջ նորանոր ույժեր, մինչև որ տարերքը չյաղթահարուեցին, մինչև որ չքացուեց այդ շըրջանը և չվճռուեցին այն հարցերը, որոնց նկատմամբ Տօլստոյը իր գործունէութեան սկզբում այն կարծիքն ունէր, թէ դրանց առաջադրութիւնը կազմում է մարդկային զարգացողութեան բարձր աստիճանը։ Տօլստոյը իրան համար պարզել էր «կեանքի իմաստը»։

Մեր արած համառօտ տեսութիւնը արդէն տալիս է հնա-

բաւորութիւն ենթադրելու, թէ՝ Տոլստոյի տեսակէտից՝ ինչո՞ւմն է կայանում այդ իմաստը, որի մասին սակայն Տոլստոյը ինքը խօսել է իր մի շարք գեղարուեստական և բարոյա-փիլիսօփայական տրակտատներում («Իվան Իլիչի մահը», «Խոստովանութիւնը», «Տէրն ու բանուորը», «Ո՞րն է իմ հաւատը» և այլն), որտեղ այդ մտքերը ձևակերպել է իբրև «ռամկացումն» և իբրև «չարին չհակառակուելու» գաղափար։ Այս սինթէզները հասկանալի են։ Եթէ իսկապէ՛ս Աստուած մեզանից դուրս չէ, և ոչ էլ բոլոր արտաքին ծէսերի մէջ է, որ տալիս է եկեղեցին, կրօնագիտութիւնը և այլն, այլ մեր մէջ, այն ժամանակ Աստուծուն ըմբռնելու, արտաքին բոլոր շերտաւորումներից ազատուելու ճանապարհը—որոնք խլացնում են Աստուծու ձայնը—է «ռամկացման» ճանապարհը։ Միւս կողմից, եթէ գոյութիւն ունի մի գերագոյն կամք, որը ղեկավարում է մեր գործողութիւնները, եթէ մարդու գիտակցական գործունէութիւնը՝ ո՛չ զգացմունքից է բղխում, այլ խելքից, այն դէպքում իրերի արտաքին ընթացքի նկատմամբ ոչինչ չի փոխուի, և եթէ ամեն ինչ այդ գերագոյն կամքի ազդեցութեամբ պէտք է ուղղուի դէպի լաւը, ապա մարդու գործունէութիւնը՝ երևոյթների փոփոխութեան նկատմամբ՝ ոչ միայն աւելորդ է, այլ և յանցաւոր։ Թող գոյութիւն ունենայ չարիքը. նրա դէմ յարուցուած կռիւը ծնում է նորանոր չարիքներ միայն. ասենք միևնոյն է՝ վերջինս կարողութիւն չունի աշխարհը տիրապետելու, որովհետև տիեզերքի վրայ տիրող օրէնքը գերագոյն ճշմարտութիւնն է, բացարձակ բարութիւնը, ըստ որում և մարդկային գործունէութեան ծրագիրը կեանքում պէտք է լինի չարին հակառակ չկենալը։

Եւ ահա երկրորդ շրջանի մի շարք գրուածքներում, երբ Տոլստոյը արդէն վճռել էր իր համար «կեանքի իմաստի» հարցը, մենք գտնում ենք նրա ջերմ քարոզները իր հայեացքների վերաբերմամբ։ «Խաւարի թագաւորութեան» մէջ նկարագրվում է այն սարսափը, որը անցնում է մարդու վրայ կուլտուրայի և քաղաքակրթութեան շնորհիւ. «Իվան Իլիչի մահը» գրուածքում խարազանվում է, ըստ Տոլստոյի, բարոյապէս այլանդակուած մարդը, որը իր ամբողջ կեանքում արել է այն, ինչ որ հաճելի է եղել մեծերին, որը չէ ունեցել սեփական ներքին «ես», իսկ եթէ ունեցել է, այն ևս խլացրած է եղել. «Կրէյցերեան Սոնատում» ամուսնութիւնն ու ցեղի յարատևութեան բնական ըզգացմունքը ենթարկվում է վճռական պարսաւի և մարդու առաջ դրվում է Բարութեան մէջ կատարելագործուելու սկզբուն-

քը, որին հասնելուց յետոյ անհատի յետագայ գոյութիւնը անիմաստ բան է դառնում. և, վերջապէս, «Յարութիւն» վէպի մէջ նկարագրվում է այն մարդու վերածնութիւնը, որը գէթ մի անգամ կեանքում լսել է իր ներքին Աստուծու ձայնը։

Վերջացնելով մեր համառօտ տեսութիւնը, կարող ենք ասել, որ եթէ հէնց իր գիտակցական գործունէութեան առաջին շրջանում Տօլստոյի առջև հանդէս եկան (Իրտենեվ) այն հարցերը, որոնց առաջադրութիւնը կազմում է մարդկային խելքի զարգացման բարձրագոյն աստիճանը, և եթէ նրան այն ժամանակ թւում էր թէ նրանց լուծումը իրան չէ տրուած,—ապա պէտք է շեշտենք, որ դա սխալ կարծիք էր, որովհետև լուծման շնորհքը նրան տրուած էր։

—

Մեր ակնարկը սկսելիս, մենք ցոյց տուեցինք, որ «կեանքի իմաստի» խնդիրը զանազան տեսակ է լուծվում պրօգրէսսի տեսութիւնների կողմից, և պնդում էինք, որ եթէ Տօլստոյի ուսմունքը կարելի լինի ձևակերպել իբրև պրօգրէսսի տեսութիւն, պէտք է նրան դասել միստիկ տեսութեան շարքը։ Հետևելով Տօլստոյի հոգևոր դէմքի աճմանը և նրա ինքնազատմանը, ծանօթանալով այն փիլիսօփայական սինթէզի հետ, որին նա ի վերջոյ հասնում է, կարող ենք ասել, որ մեր պնդումը ունեցել է իր հիմունքները, որովհետև մարդու և մարդկութեան կեանքը Տօլստոյը քննում է իբրև նախասահմանուած բարձրագոյն Բարու, որը համաձայնեցուած է մեր ներքին Աստուծու հետ։

Ա. ՄԱԼԽԱՁԵԱՆ

# ԻՍԼԱՄ ԵՒ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ

---

Քրիստոնէական կրօնի առաւելութիւններից մէկն այն է, որ նա թելադրելով մի քանի շատ բարոյական սկզբունքներ, որոնցով պիտի ղեկավարուեն իր հետևողները, թողնում է նրանց՝ մնացեալի մէջ կատարեալ ազատութիւն, կանոնաւորելու և տնօրինելու իրանց անհատական և հասարակական կեանքը այնպէս, ինչպէս իրանք են ցանկանում։ Սիրոյ վեհ պատուիրանը միակ սահմանն է, որ դրուած է նրանց անել և թողնելուն։

Բոլորովին մի այլ պատկեր է ներկայացնում իսլամը։ Արտաքին կեանքի ամեն մի յարաբերութեան և գործողութեան համար նա տալիս է որոշ աստուածային կանոններ, որոնք իբր երկնային յայտնութիւն ընդ միշտ պարտաւորեցուցիչ և անփոփոխելի են հաւատացեալների համար։ Մահմեդականի կրօնական և բարոյական, քաղաքացիական և հասարակական կեանքը ամենամանրամասնօրէն կանոնաւորուած է շարիաթի սուրբ օրէնքով։ Օրէնքը նրան թելադրում է ոչ միայն աղօթելու, ծոմ պահելու, ողորմութիւն տալու, այլ և տուն վարձելու, առևտուր անելու, լուացուելու, նստելու և այլ զուտ աշխարհական գործողութիւնների պարտաւորեցուցիչ ձևերը։ Քաղաքացիական օրէնքը կրօնի մի էական մասն է, և կրօնը կեանքի իւրաքանչիւր արտայայտութեան ուղեցոյցն է։ Մահմեդականը ապրում է միայն իր կրօնն իրագործելու համար. նա լուծվում է իր կրօնի մէջ։

Մի այդպիսի՝ անհատի և հասարակութեան կեանքի բոլոր կողմերին տիրապետող և քաղաքացիական իրաւունքների ամենախորքերը թափանցող՝ կրօն, ի հարկէ, բոլորովին այլ դեր պիտի կատարի քաղաքական զարգացման գործում, քան քրիստոնէութիւնը, իր անտարբերութեամբ դէպի կեանքի արտաքին ձևերը։ Նրա դերը առաւել մեծ է, քանի որ խաւար մահմեդական ամբոխի մէջ դեռ չի արթնացել կրօնական սկեպտիցիզմը։ Ժողովրդի մասսան կուրօրէն հաւատում է, հոգևորականութիւ-

նը իր ազդեցութիւնից օգտուելով այդ հաւատին սնունդ է տալիս, և շատ ու քիչ զարգացած տարրը լռում է կամ եռանդով պաշտպան հանդիսանում շարիաթի անձեռնմխելիութեան, մասամբ վախից՝ չգրգռելու ամբոխի զայրոյթը, մասամբ էլ համոզուած լինելով իսլամի գերազանցութեանը կամ գոնէ կարծելով որ անկարելի է առ այժմ նորութիւնները կրօնամոլ ժողովրդին ընդունելի դարձնել՝ առանց կրօնական ձև տալու նրանց։

Այդպիսով՝ կրօնական հարցերը խառնելով աշխարհական հարցերի հետ՝ քաղաքական յեղաշրջումը մահմեդական երկիրներում բոլորովին տարբեր բնաւորութիւն է ստանում, քան Եւրոպայում։ Երբ արևմտեան աշխարհում բռնկուեցին սահմանադրական կռիւները, պապերի և կղերի պրետենզիաները աշխարհական գերիշխանութեան նկատմամբ արդէն յետ էին մղուած. կրօնի մասին՝ բողոքականութեան և տարածուող լուսաւորութեան շնորհիւ՝ հայեացքները փոխուել էին և աշխարհական ու կրօնական գործերի սֆերաները՝ հռոմա-գերմանական կայսրութեան անկումից և բացարձակ իշխանութիւններին տեղի տալուց յետոյ՝ իրարից ջոկուած էին։ Եւրոպայի սահմանադրական շարժումների ժամանակ կրօնը չէզոք էր, հոգևորականութեան ոյժը նուազած, ամբոխը կրօնական հարցերում անտարբեր և մասամբ էլ ազդուած լուսաւորութեան դարի անաստուածական և նիւթապաշտական վարդապետութիւններից։ Հարցը այն չէր, թէ ինչ են թելադրում կրօնը և եկեղեցին, այլ թէ՝ ինչ են պահանջում բնութիւնը, բանականութիւնը, առողջ միտքը և արդարութիւնը։ Այդ հարցը դնում և նրան պատասխանում էին յեղափոխութեան հոգևոր հայրերը՝ պահանջելով ժողովրդի արիւնը ծծող ազնուականութեան արտօնութիւնների վերացումը և հաւասարութիւն օրէնքի առաջ, փչացած կղերի սանձահարումը և համոզմունքների ազատութիւն, միապետի իրաւունքների սահմանափակումն և ժողովրդի մասնակցութիւնը պետական վարչութեան մէջ. ազատութիւն, հաւասարութիւն և եղբայրութիւն։

Նոյն պահանջները դնում են և մահմեդական սահմանադրական րէֆօրմատօրները. այդ պահանջները դնում են նրանք, որովհետև եւրոպական օրինակն է նրանց աչքի առաջ, և դէպի եւրոպական սահմանադրական ձևերն են ձգտում նրանք։ Այդ անում են նրանք, գիտակցելով որ այլապէս անկարելի է աջողութեամբ փոխել տիրող անմխիթար դրութիւնը։ Բայց բաւական չէ պահանջներ դնել. հարկաւոր է և նրանց անհրա-

ժեշտութիւնը ապացուցանել, արդարացնել նրանց գոյութիւնը։ Ինչո՞վ արդարացնել. բանականութեան և բնութեան օրէնքներով։ Ոչ. դա անկարելի է։ Ժողովուրդը և մօլլաները պահանջում են կրօնական ապացոյցներ, և րեֆօրմատօրները՝ նեղը չմնալով՝ յանդգնօրէն պատասխանում են. «Սահմանադրական բոլոր սկզբունքները իսլամի մէջ պարունակուած են. հարկաւոր է միայն ճշտութեամբ կատարել սուրբ կրօնի պատուիրանները, և մենք կունենանք աւելի լաւ սահմանադրութիւն, քան ունի եւրոպական որևէ երկիր»։ Սահմանադրութիւնը Թիւրքիայում վերահաստատուելուց յետոյ Կ. Պօլսի շէյխ-իւլ-իսլամը պարտաւորուած է համարում իրան մի շրջաբերականով, որ գրուած էր արաբական, թիւրքական և պարսկական լեզուներով, դիմել բոլոր ուլեմաներին, մուֆթիներին և կադիներին, յայտնելով նրանց որ սահմանադրութիւնը անթոյլատրելի նորութիւն չէ, այլ իրագործումն իսլամի դեմօկրատիական ու հաւասարութեան սկզբունքների։ Պարսկական մէջլիսը բացուելուց յետոյ շիական բարձր մուջտէիդները դիմում են այդ մարմնին, հարցնելով թէ ինչ են նշանակում սահմանադրութիւն ու ազատութիւն, և խոստանում են իրանց աջակցութիւնը, լսելով որ սահմանադրութեան միակ նպատակն է պաշտպանել ժողովրդին և սահմանափակել թագաւորի իրաւունքները, համաձայն շարիաթի սուրբ ու անփոխարինելի օրէնքների, և տալ ամեն մի պարսկի այն անհատական ազատութիւնն ու ապահովութիւնը, որ նախատեսուած է իսլամական կրօնի մէջ։ Մէջլիսի տուած օրէնքները և նորութիւնները երբէք չպիտի հակասեն շարիական օրէնքին։ Ամեն մի ճառախօսի ճառի մէջ և լրագիրների ամեն մի համարում կը հանդիպենք նոյնանման դատողութիւնների. «Իսլամը սահմանադրական կրօն է, եւրոպացիք իրանց ազատագրական գաղափարները մեր սուրբ գրքերից են վերցրել և նապօլէօնական օրէնսգրքերը կազմելիս օգտուել են լայն չափով մեր օրէնքներից»։

Ճի՞շտ է արդեօք շարիաթի սուրբ օրինաց և սահմանադրական սկզբունքների համաձայնութիւնը, ինչպէս որ մահմեդական հրապարակախօսները սիրում են հաւատացնել։ Փորձենք հետազօտել, աննպատակ չհամարելով այդպիսի մի հետազօտութիւն, մանաւանդ որ՝ ինչպէս տեսանք՝ կրօնը դեռ բացարձակ կերպով իշխում է հաւատացեալների համոզմունքների և կենցաղավարութեան վրայ։

Հետևելով սահմանադրական կարգերի գլխաւոր և բնորոշ յատկանիշներին, որոնք են՝ ժողովրդի համար և ժողովրդի մի-

ջոցով, հաւասարութիւն օրէնքի առաջ, ապահովութիւն անձի ու գոյքի և ազատութիւն համոզմունքների ու նրանց արտայայտութեան, ի ստորև կաշխատենք ուսումնասիրել իսլամական սկզբունքները այդ կէտերի նկատմամբ։

## [illegible]. Խիլաֆաթ եւ իմամաթ

Երբ Մուհամեդը՝ առանց կարգադրութիւն անելու իր յաջորդութեան մասին՝ մեռաւ, կռիւներ ծագեցին հաւատացեալ համայնքի մէջ խալիֆէութեան մասին։ Ո՞վ պիտի իբր մարգարէի տեղապահ (խալիֆ) ղեկավարէր նրա թողած համայնքը։ Կօրէիշների կուսակցութեան, որ ընտրողական սկզբունքն էր պաշտպանում, հակառակում էին ալիականները՝ պահանջելով ժառանգական յաջորդութիւնը ի նպաստ Ալիի և նրա գերդաստանի։ Յաղթեց առաջին կուսակցութիւնը, և Աբուբէքրը, ընտրուելով խալիֆ՝ մարգարէի ընկերների կողմից, վերջ տուեց յաջորդութեան կռուին։ Աբուբէքրի մահից յետոյ ընտրուեց Օմարը։ Իսկ սա իր կենդանի ժամանակ նշանակել էր մի խորհուրդ վեց հոգուց բաղկացած, որ իր մահից յետոյ ընտրի նոր խալիֆ։ Օմարը սպանուեց, և նրա նշանակած խորհուրդը ընտրեց Օսմանին։ Օսմանի սպանութիւնից յետոյ Մեդինա սուրբ քաղաքում գտնուող երևելիները ընտրեցին Ալիին իբր խալիֆ։ Ալին էլ սպանուեց և սրա որդին՝ Հասանը՝ վեց ամիս իր հօրը հետևելուց յետոյ հրաժարուեց յօգուտ Մուավիային, որ խալիֆէութեան աթոռը փոխադրելով Մեդինայից Դամասկոս, որտեղ նա առաջ կուսակալ էր, այդ իշխանութիւնը իր տոհմի մէջ ժառանգական դարձրեց։ Մուավիայի հիմնած Օմայական խալիֆէութիւնը տևեց 661 թուից մինչև 750 թ. Քրիստոսից յետոյ։ 750 թուականին խալիֆէութիւնը անցաւ Աբասեան տոհմին, որ Բաղդադը իր մայրաքաղաք ընտրեց։ 1258 թ., երբ մօնղօլները վերցրին Բաղդադը, Աբասեան խալիֆները, փախչելով Եգիպտոս, շարունակեցին այնտեղ մամելուկների հովանաւորութեան ներքոյ մի ողորմելի գոյութիւն իբր իսլամի անուանական հոգևորական պետեր մինչև 1517 թ., երբ օսմանեան սուլթան Սելիմ I, տիրելով Եգիպտոսին, խալիֆէութիւնը կապեց իր հարստութեան հետ։

Սիւննիադաւան մահմեդականների համար օրինակելի է միայն չորս առաջին խալիֆների վարմունքը։ Ճիշտ է, նրանք էլ անսխալական չէին և ոչ էլ ընդունակ աստուածային յայտնու-

թիւններ ստանալու, բայց նրանք Մուհամեդի ընկերներն էին և մօտիկ բարեկամները և հետևաբար կարող՝ կրօնական վիճելի կէտերի նկատմամբ վճռել այնպէս, ինչպէս մարգարէն պիտի անէր, եթէ կենդանի լինէր։ Նրանք անուանվում են մեծ խալիֆներ. նրանց խօսքերը նուիրական են և նրանց մեկնութիւնները պարտաւորեցուցիչ։

Ուրեմն այդ չորս մեծ խալիֆների օրով տիրող սովորութիւնն է, որ մահմեդական իրաւաբանները հիմք են դարձնում իրանց թէօրիաներին՝ խալիֆէութեան կոչման և խալիֆի իրաւունքների ու պարտաւորութիւնների մասին։ Այդ առաջին չորս խալիֆների օրինակի վրայ յենուելով՝ շարիաթը որոշում է խալիֆէական դիրքը ստանալու համար հետևեալ կանօնները.

ա) Խալիֆը պէտք է ժողովրդի կողմից ընտրուի, ինչպէս ընտրուեցին չորս մեծ խալիֆները։

բ) Խալիֆան կարող իր յաջորդին առաջարկել, ինչպէս որ Օմարը առաջարկեց իր կողմից կոչուած մի խորհրդին ընտրել Օսմանին. բայց այդ դէպքումն էլ հարկաւոր է ընդհանրութեան համաձայնութիւնը։

Ընտրութեան սկզբունքը ընդհանրապէս ընդունելով՝ ընտրութեան եղանակի նկատմամբ տարբերվում են մահմեդական մեծ իրաւագէտների կարծիքները։ Մի քանիսը պահանջում են ընդհանուր ընտրութիւն. միւս ծայրայեղները բաւական են համարում հինգ երևելիների ձայնը։ Մէջտեղում գտնվում է մեծամասնութեան կարծիքը, որ պահանջում է ընտրութիւն «իջմայի-ումիթի» միջոցով, այսինքն ազգի երևելիների և հեղինակաւոր աստուածաբանների կողմից, առանց սահմանելու ընտրողների թիւը և ընտրութեան եղանակը։

Վերևում յիշուած երկու ընտրութեան ձևերին աւելացնում է մահմեդական իրաւագիտութիւնը՝ իրականութեան ճնշման տակ՝ մի երրորդ ձև, այն է՝ «ստիպողական ընտրութիւնը»։ Դա այլ ևս ընտրութիւն չէ, այլ ուզուրպացիա։ Եթէ անիշխանութեան ժամանակ, երբ բացակայում է օրինաւոր իշխան, մի մահմեդական կարողանում է պետութեան ույժը իր ձեռքն անցկացնել, հարկաւոր է նրա հեղինակութիւնը ճանաչել և հնազանդուել յօգուտ երկրի խաղաղութեան, նոյն իսկ եթէ նա չունենայ խալիֆի նկատմամբ պահանջուած յատկութիւնները։

Խալիֆէութեան այս երրորդ ձևը միայն բացասական նշանակութիւն ունենալով՝ մնում է ընտրութիւնը, այսինքն ժողովրդի համաձայնութիւնը, արտայայտուած՝ նրա հոգևոր ղեկավարների միջոցով, խալիֆ կոչուելու միակ հիմքը։ Եւ իսկապէս

ընտրողական սկզբունքի գիտակցութիւնը միշտ այնքան ուժեղ էր մահմեդականների մէջ, որ Օմայեան և Աբասեան խալիֆներն էլ՝ չնայած արդէն սովորութիւն դարձած ժառանգութեան՝ խոհեմութիւն էին համարում ամեն մի նոր յաջորդին ամբոխի կողմից կատարուող խոնարհութեան ցոյցերի միջոցով և յաճախ էլ բռնի կերպով վաւերացնել տալ։ Առաջին թիւրքական խալիֆը, սուլթան Սելիմը, իրան ընտրել տուեց եգիպտական և թիւրքական հոգևորականութեան կողմից և մինչև այսօր էլ Թիւրքիայում և Պարսկաստանում ուլեմաների արտօնութիւնն է սուրը կապել գահ բարձրացող նոր իշխանի մէջքին։ Սուրը իշխանութեան սիմվօլն է, որ հոգևորականը՝ իբր ժողովրդի ներկայացուցիչ՝ յանձնում է իր ընտրեալին։

Բայց ամեն մէկը չի կարող մարգարէի տեղապահ ընտրուել։ Ընտրուողից շարիաթը պահանջում է որոշ յատկութիւններ, որոնք՝ ըստ յայտնի իրաւագէտ Մավերտի՝ հետևեալներն են. 1) անարատութիւն և ուղղափառութիւն, 2) կրօնի և օրինաց գիտութիւն, 3) զգայարանների և անդամների ամբողջութիւն, 4) առողջ դատողութիւն, 5) քաջութիւն սահմանները պաշտպանելու և սուրբ կռիւ մղելու համար, 6) չափահասութիւն, 7) արական սեռ և 8) ծագումն Կօրէյիշեան տոհմից, այսինքն Մուհամեդի գերդաստանից։ Վերջին յատկութիւնը մի քանի իրաւագէտներ պարտաւորեցուցիչ չեն համարում։

Ոչ միայն ընտրուողից, այլ և ընտրողից շարիաթը պահանջում է որոշ յատկութիւններ, այն է՝ բարոյական անարատութիւն, առողջ դատողութիւն՝ յարմարագոյնին ընտրելու և գիտական հասկացողութիւն՝ ճշտօրէն դատելու, թէ ո՛ր անձինք ունեն խալիֆէութեան պահանջած յատկութիւնները։ Թէև խալիֆը ընտրվում է վարելու հաւատացեալ համայնքի գործերը մինչև իր մահը, բայց ժողովուրդը կարող է, իրաւագէտների կարծիքով, ամեն ժամանակ նրան գահից ձգել, երբ նա օրէնքը ոտնակոխ է անում, իր պարտականութիւնները անհոգ թողնում կամ, կորցնելով իր հոգեկան և մարմնական ընդունակութիւններից մինը, անկարող է հանդիսանում ստանձնած պարտականութիւնները կատարել։ Ընտրութիւնը մի պայման է ժողովրդի և խալիֆի միջև, որով վերջինն որոշ պարտաւորութիւններ է ստանձնում և առաջինը խոստանում նրան հնազանդուել։ Եթէ խալիֆը չէ կատարում իր ստանձնած պարտաւորութիւնները կամ անկարող է լինում կատարելու՝ կորցնելով խալիֆէութեան համար վերևում յիշուած անհրաժեշտ յատկութիւններից մինը (օրինակ՝ խելագարուելով, խրօնիկական հի-

ւանդութիւն ստանալով, կուրանալով և այլն), պայմանը լուծուած է համարվում և միւս կողմի՝ այսինքն ժողովրդի համար։ Ընդհանրութիւնը և ամեն մի անհատ իրաւունք ունի և պարտաւոր է հսկել խալիֆի պաշտօնավարութիւնը, օրինազանցութեան դէպքում նրա սխալները քննադատել և յամառութեան դէպքում նրա գահընկէցութիւնը պահանջել։ Ժողովրդի այս իրաւունքը հիմնուած է Աբուբէքր մեծ խալիֆի առաջին ճառի վրայ, որտեղ նա ասում է. «Ով ժողովուրդ, դուք ինձ ընտրեցիք. աջակցեցէք ինձ՝ եթէ ճիշտ եմ վարվում և ուղղէք ինձ՝ եթէ սխալներ եմ անում. ինձ համար ճշմարտութիւնը վստահութիւն է և սուտը՝ մատնութիւն. ամենաուժեղները ձեր մէջ, որոնք դիպչում են ուրիշների իրաւունքներին, իմ առաջս ամենաթոյլերն են և ամենաթոյլերն՝ ամենաուժեղները, երբ հարկաւոր է նրանց իրաւունքները պաշտպանել. հնազանդեցէք ինձ, ինչպէս հնազանդում էք Աստուծուն և մարգարէին, բայց մի հնազանդէք, եթէ ես հակառակ եմ գործում Աստուծու և մարգարէի կողմից հաստատուած օրէնքներին»։

Խալիֆէի պարտականութիւնները, մահմեդական իրաւագէտների կարծիքով, հետևեալներն են. 1) պահպանել կրօնի սկզբնական մաքրութիւնը, 2) արդարադատութիւն, 3) հաստատուն պահել հասարակական անդորրութիւնը, 4) պատժել չարագործներին, 5) պաշտպանել երկրի սահմանները, 6) կռւմղել՝ իսլամը տարածելու, 7) հաւաքել և խնայողաբար տնտեսել պատերազմի աւարը և տուրքերը, 8) նշանակել վստահելի պաշտօնեաներ և 9) անձամբ և ուշադրութեամբ մասնակցել պետական գործերին։ Խալիֆի անձը անձեռնմխելի չէ, այլ նա պատասխանատու է իր արածի համար, ինչպէս մասնաւոր մի անհատ։ Քրէական պատիժները նրա համար նոյնքան գոյութիւն ունեն, ինչպէս իւրաքանչիւր մի ուրիշի համար։ Նա լիովին ենթարկուած է օրէնքներին։

Բաւական է մի հայեացք ձգել Թիւրքական վերջին դարի պատմութեան վրայ, և մենք կը տեսնենք, որ խալիֆի պատասխանատուութեան վերաբերեալ օրէնքները անիրագործելի թէօրիաներ չեն։ Քանի սուլթաններ գահից հրաժարեցուել են. և դա կատարվում էր ամեն անգամ շէյխ-իւլ-իսլամի ֆէթվայի (դատավճիռ) հիման վրայ, որով շեշտվում էր իշխող խալիֆի անընդունակութիւնը՝ իսլամ ժողովրդի գործերը վարելու։ Այդ ձևով կատարուեց Աբդիւլ-Ազիզի հրաժարեցումը՝ առարկելով նրա շռայլութիւնը և անընդունակութիւնը. նոյն ձևով գահընկէց արին Մուրադին՝ նրա խելագարութիւնը փաստ բերելով.

Աբդիւլ-Համիդ II-ի հրաժարեցման օրինաւորութիւնը նոյն եղանակով արդարացուեց։

Մահմեդական իրաւագիտութեան մէջ հանդիպում ենք և խորհրդակցութեան (մշավերէ) գաղափարին. չէ՞ որ Մուհամեդն ինքը՝ չնայած իր անսխալութեան՝ աշխարհական գործերում, մանաւանդ պատերազմական հարցերում, դիմում էր սերդարների և էսհաբների (իր ընկերների) խորհրդին և վարվում մեծամասնութեան ցանկութեամբ։ Նոյն օրինակին հետևում էին՝ աւել կամ պակաս չորս չափով՝ մեծ խալիֆները։

Սխալ է այն կարծիքը, որ վերագրվում է խալիֆէութեանը թէօկրատական բնաւորութիւն։ Գուցէ միայն առաջին չորս խալիֆների նկատմամբ կարելի է ասել, որ նրանք ազգի կրօնական պետերն էին։ Բայց և նրանց օրով լուծվում էին կրօնական և պետական սկզբունքային հարցերը իջմայի-ումմէթի միջոցով, այսինքն Մուհամեդի ընկերների (էսհաբ) և յայտնի աստուածաբանների (արբաբը-խաբրէ, ուլեմա) ընդհանուր վճռով. մեծ խալիֆները՝ իրանք էլ Մուհամեդի ընկերներից լինելով՝ մասնակցում էին այդպիսի վճիռներին։ Նրանցից յետոյ կրօնական վարչութիւնը անցնում է հետզհետէ կազմակերպուող հոգևորականութեան՝ մուշտէիդների և շէյխ-իւլ-իսլամների՝ ձեռքը, և խալիֆին մնում է միայն աշխարհական պետի կոչումը։ Բայց աշխարհական գործերումն էլ նա միայն գործադիր ոյժն (իմարէթ) է ներկայացնում։ Օրէնսդրական ոյժ գոյութիւն չունի, որովհետև օրէնքները արդէն առաջուց գրուած են, և եթէ հարկաւոր լինի այդ աստուածային օրէնքները մեկնաբանել կամ անալօգիայով (կիաս) լրացնել, դա սուրբ գրութիւններին ծանօթ աստուածաբաններին է վերապահուած։

Նմանապէս և դատավարութիւնը (կիզավէթ) խալիֆի ձեռնհասութիւնից դուրս է. դատաւորը պիտի ծանօթ լինի սուրբ օրէնքներին և ընդունակ՝ նրանց մեկնութիւն տալու։ Իբր դատաւորներ նշանակում էին խալիֆները օրէնսգէտ կադիներին, և սրանք իրանց դատավճիռները տալիս էին միայն շարիաթի հիման վրայ։ Իրաւաբանական և գործադիր ոյժերը իրարից բաժան էին։

Խալիֆին մնում էր միայն զօրապետութիւնը և գործադիր ոյժը, այսինքն նշանակել պաշտօնեաներին, գործադրել իջմայի-ումմէթի և դատաւորների վճիռները, հաւաքել և օրէնքի համաձայն գործադրել օրինական տուրքերը և աւարը։ Բացի դրանից՝ նա պարտաւոր էր մզկիթում կատարուող աղօթքներին մասնակցել և ուրբաթ օրը քարոզել. բայց չորս մեծ խալիֆե-

նիրից յետոյ, խալիֆէները այդ պարտականութիւնը ուրիշների միջոցով էին կատարել տալիս կամ միայն ձեւականօրէն ուրբաթ օրը մզկիթ գնում, ինչպէս որ անում են մինչև օրս էլ օսմանեան սուլթանները։

Ամփոփելով այդ բոլորը մենք տեսնում ենք, որ խալիֆի կոչումը՝ իբր մարգարէի տեղապահ և իսլամական համայնքի գործերի կառավարիչ՝ կախուած է ընդհանրութեան ընտրութիւնից կամ գոնէ համաձայնութիւնից։ Խալիֆը թէօկրատ չէ, ենթարկուած է օրէնքների և չունի օրէնսդրական ոյժ։ Դատավարութեան նկատմամբ ձեռնհաս են միայն օրէնսգէտ դատաւորները։ Զօրքի հրամանատարութիւնը և գործադրական ոյժը պարտաւոր է գործադրել շարիաթի օրէնքների համաձայն։

Նրան հնազանդուելը միայն պարտաւորեցուցիչ է, երբ նա գործում է օրէնքի համապատասխան, կատարում է իր պարտականութիւնները և առհասարակ ընդունակութիւն ցոյց տալիս խալիֆէութեան կոչման համար. հակառակ դէպքում ժողովրդի իրաւունքը և պարտականութիւնն է հրաժարեցնել նրան յօգուտ ընդհանուր բարօրութեան։

Այսքանը բաւական է այն եզրակացութեան գալու, որ խալիֆի իշխանութեան առաջ նեղ սահմաններ են քաշուած, և որ նրա իրաւունքները նոյն իսկ աւելի սահմանափակ են, քան սահմանադրական թագաւորութեան վերապահված իրաւունքները։ Բայց մեր մինչև այստեղ ասածները միայն սիւննիադաւան իսլամութեան նկատմամբ նշանակութիւն ունեն։ Շիա մահմեդականները այլ սկզբունքներ են դաւանում խալիֆէութեան մասին, և թէպէտ նրանք մահմեդական համայնքի հազիւ 20°/$_{0}$-ն են կազմում, բայց աւելորդ չէ և մի հայեացք ձգել նրանց վարդապետութեան վրայ, մանաւանդ որ իսլամական երկրորդ մեծ պետութիւնը (Պարսկաստանը) շիադաւան բնակչութիւն ունենալով՝ իբր պաշտօնական կրօն շիականութիւնն է ընդունում։ Իսլամի բաժանումն երկու մեծ դաւանութիւնների՝ հէնց առաջ է գալիս խալիֆէութեան նկատմամբ տարբերուող կարծիքներից։ Շիական կուսակցութիւնը՝ հակառակելով ընտրութեան սկզբունքին՝ կազմակերպուած է պաշտպանելու Ալիի իրաւունքները, որ՝ լինելով առաջին հաւատացեալը և մարգարէի սիրելին, հօրեղբօր-որդին, որդեգիրը և փեսան՝ ժառանգական իրաւունք ունէր (այդ կուսակցութեան կարծիքով) Մուհամեդի տեղապահութեան նկատմամբ*)։

*) Մուհամեդի տղան փոքր հասակում մեռաւ. իսկ նրա աղջիկներից միայն Ֆաթիման, Ալիի կինը, կենդանի էր հօր մահուան ժամանակ։

Ինչպէս վերևում յիշեցինք, Ալին իբր չորրորդ խալիֆ ընտրուեց։ Բայց սպանուելուց յետոյ նրա որդին՝ Հասանը (իր մօր՝ Ֆաթիմայի կողմից Մուհամեդի թոռն) հրաժարուեց յօգուտ Մուավիայի, որ հիմնեց Օմայադների ժառանգական խալիֆէութիւնը։ Շիաները համարում են՝ բացի Ալիից՝ բոլոր խալիֆներին ապօրինի բռնակալներ և վերագրում են Մուհամեդի յաջորդութեան իրաւունքը Ալիին և տասն-մէկ անձանց նրա սերունդից։ Այդ 12 իմամները Մուհամեդի աթոռի օրինաւոր ժառանգներն են, և նրանց աւանդութիւնն է միակ ճիշտը։ Բռնութիւնը նրանց զրկեց աշխարհական ոյժից*). բայց նրանք մնացին շիաների կրօնապետները։ Տեսնում ենք մի էական տարբերութիւն խալիֆէութեան նկատմամբ սիւննիների և շիաների միջև։ Վերջինների կարծիքով՝ մարգարէի տեղապահութեան կոչումը բոլորովին անկախ է ժողովրդի կամքից և ժառանգական՝ Ալիի գերդաստանում։ Մուհամեդից յետոյ 12 իմամներն են Աստուծու կողմից նշանակուած՝ կառավարելու շիաների աշխարհական և կրօնական գործերը։ Նրանք թէօկրատներ են, ոչ միայն Մուհամեդի, այլ և Աստուծու տեղապահները երկրի վրայ (խալիֆաթուլլահ)։ Ծայրայեղ շիաների կարծիքով՝

*) Ալին ինքը հաւատարիմ, ճշմարիտ և քաջ մարդ էր, յայտնի ընդունակութիւններով իբր բանաստեղծ և հրապարակախօս։ Նրա առաջին որդին, Հասանը, 6 ամիս հօր պաշտօնը վարելուց յետոյ հրաժարուեց յօգուտ Մուավիայի և ստացած մեծ գումարով սկսեց Մեդինա սուրբ քաղաքում զեղխութեան և աստուածավախութեան մէջ ապրել, մինչև որ Եզիդի դրդմամբ իր կնոջ ձեռքով սպանուեց։

3-րդ իմամը՝ Հուսէյնն է, Ալիի երկրորդ որդին և՝ Հասանի պէս՝ մարգարէի թոռն։ Եզիդի հետ ունեցած ընդհարման մէջ սպանուեց։ Նրա մի որդին միայն ազատուեց ընդհանուր ջարդից և դա Զէյնալաբեդդին՝ 4-րդ իմամն է, որ՝ բաւականանալով շիաների կրօնապետութեամբ՝ չմասնակցեց խռովութիւններին։ Նոյն քաղաքականութեան հետևեց նրա որդի Մուհամմեդ-էլ-Բաքիրը՝ որ է 5-րդ իմամը, և նմանապէս սրա որդին՝ իր բարեպաշտութեամբ և գիտութեամբ իմամների մէջ յայտնի՝ Ջաֆերը (6-րդ իմամը) և վերջինիս որդի Մուսա-էլ-Քեազիմ (7-րդ իմամը)։ Նոյն եղանակով իմամաթը անցնում է հօրից որդուն Ալի-էլ-Րիզա (8-րդ իմամը), Մուհամմեդ-էթ-Թաղի (9-րդ իմամը), Ալի-էն-Նաղի (10-րդ իմամը), Հասան-էլ-Ասքերի (11-րդ իմամը) և Մուհամմեդ-էլ-Մեհտի (12-րդ և վերջին իմամը) իմամներին։ Բոլոր վերջինները հանգիստ ապրում էին Բաղդադի խալիֆների աչքի տակ՝ առանց քաղաքական պրետենզիաներ ունենալու։ Բայց երբեմն ենթարկվում էին հալածանքի, երբ արթնանում էր խալիֆէների նախանձը։ Մուսա-էլ-Քեազիմ և Ասքերի իմամները մեռնում են բանտում։ Մամուն խալիֆը թունաւորում է Ալի-էր-Րիզային՝ նրան իր քոյրը տալուց և ժառանգ կարգելուց յետոյ։ Վերջին իմամը յանկարծ անհետանում է, երբ կառավարութիւնը ուզում է նրան ձերբակալել։

Աստուծու ոգին իջել է Ալիի մէջ, և ամեն մի իմամ ներկայացնում է աստուածային յայտնութիւն։ Թէև պարսիկները ծայրայեղ շիաներից չեն, բայց և այնպէս նրանք էլ վերագրում են իմամներին անսխալականութեան յատկութիւնը, համարում են նրանց իբր մարմնացած կրօնական և բարոյական օրէնք և նրանց վճիռները աստուածային և անսխալ, որոնց պիտի անպայման և կուրօրէն հետևել։ Վերջին իմամը, իմամ Մէհտին, աներևութանալուց յետոյ ապրում է մարդկանց մէջ և ներկայ է շիաների բոլոր ժողովներում առանց երևալու. և երբ ժամանակը եկած կը համարի, նա երևան կը գայ և կը ստանձնի շիաների աշխարհական և կրօնական վարչութիւնը։ Նա է այժմ շիաների իսկական պետը (իմամը-էսր, իմամը-զէման, սահիբի-վիլայէթ, սուլթանը-հաք). և որովհետև նա արգելուած է անձամբ կառավարել, ուստի մինչև նրա գալուստը շիաների կառավարութիւնը պիտի կատարուի նրա անուամբ և տեղապահի ձեռքով։ Ո՞վ պիտի լինի տեղապահ։ Պարսկաստանում Սեֆեվեան թագաւորները իրանց անուանում էին «երկրի իսկական շահի (այսինքն վերջին իմամի) ստուերը»՝ արտայայտելով դրանով իրանց տեղապահութիւնը։ Նրանց ծագումը լինելով 7-րդ իմամից՝ ժողովրդի մեծամասնութիւնը ընդունում և պաշտում էր նրանց իբր տեղապահներ վերջին իմամի։ Սակայն հոգևորականութիւնը այլ կարծիքի էր, պնդելով որ տեղապահութեան համար անհրաժեշտ են՝ բացի իմամական ծագումից՝ և մուշտէիդական յատկութիւններ, այսինքն վարքի անարատութիւն և կրօնի ու շարիաթի կատարեալ գիտութիւն։ Սեֆիվիներին հետևեցին պարսից գահի վրայ Աֆշարեան, Զենդեան և վերջը Ղաջարեան հարստութիւնները։ Դրանք ամենքը հոգևորականութեան և ժողովրդի աչքում բռնակալներ են. նրանք ոչ սէիդ են, ոչ մուշտէիդ։ Իմամ Մեհտիի տեղապահութիւնը հեղինակաւոր հոգևորականները, Նեջեֆի մուշտէիդները, իրանց են վերապահում, և նրանց է ժողովուրդը տալիս նայիբ-իւլ-իմամ (իմամի տեղապահ) և բայիս-ուլ-միլլէթ (ազգի պետ) տիտղոսները։ Ղաջարեան շահերը իշխում են միայն իրանց սուրի ոյժով, և ժողովուրդը տանում է նրանց իշխանութիւնը հանգամանքներից ստիպուած, կարօտով նայելով դէպի Նէջէֆ և ուղղութիւն ստանալով այդտեղի գլխաւոր մուշտէիդներից։ Ներկայումս, երբ ղաջարեան սուրը բթացել է, իրականապէս Նէջեֆի հոգևորականներն են երկրի վիճակը ղեկավարողները. նրանց ֆէթվաների շնորհիւ սահմանադրութիւնը արմատ բռնեց, նրանց դրդմամբ Մուհամեդ-Ալին գահից տապալուեց և նրանց

տրամադրութիւնից է կախուած գլխաւորապէս նոր կարգերի լինել-չլինելը։ Նրանց մի խօսքը բաւական է, մէջլիսը ցրիւ տալու, եթէ նկատեն նրանում շարիաթին վնասակար մի ընթացք։ Շատերի կարծիքով՝ արդէն ժամանակն է, որ նրանցից մէկը գայ մաքրելու Իրանի գահը բռնակալներից և ստանձնի պաշտօնապէս իմամի տեղապահութիւնը. բայց մուշտէիդները լաւ գիտեն, որ այդ շատերի կարծիքից բացի գոյութիւն ունի և եւրօպական պետութիւնների կարծիքը, որ հազիւ թէ թոյլ տայ այդպիսի մի հիմնական փոփոխութիւն պարսից պետական կազմի մէջ։

Իմամութիւնը, ինչպէս տեսանք, աստուածային մի հաստատութիւն է, անկախ՝ ժողովրդի կամքից։ Իսկ իմամի տեղապահը՝ լինի նա շահ թէ մուշտէիդ՝ երբէք թէօկրատ չէ, այլ նրա կառավարութիւնը պիտի լինի համաձայն շարիաթի օրինաց և արդարութեան։ Նա անսխալական չէ, ինչպէս իմամը ինքը, այլ օրէնքին ենթարկուած, և պիտի անարժանութեան դէպքում գահից հրաժարուի՝ աւելի արժանաւորին տեղ տալու։ Այս կէտում սիւննիների և շիաների կարծիքները մօտենում են իրար։

Գալով այն եզրակացութեան, որ խալիֆի և նմանապէս իմամի տեղապահի դիրքը և իրաւունքները էապէս համապատասխանում են սահմանադրական պահանջներին, անցնենք այժմ համառօտաբար քննելու շարիաթի օրէնքները միւս սկզբունքների տեսակէտից, որոնք յատուկ են սահմանադրական ռեժիմին։

## 2. Հաւասարութիւն օրինաց առաջ

Հին արաբները գնահատում էին մարդուն նրա ցեղով և ծագումով. տիրում էր արիստօկրատական ոգին։ Իսլամը վերացնում է միանգամից դասակարգերի տարբերութիւնը. «հաւասարութիւն և եղբայրութիւն բոլոր հաւատացեալների»—լինում է նրա քարոզած սկզբունքը։ Բոլոր մահմեդականները հաւասար են իրար, լինեն նրանք արաբ թէ աջէմ, ազատ ծնուած թէ ազատուած գերիներ։ Ղուրանի 49-րդ սուրէի տուն 10-րդում և 13-րդում Աստուած յայտնում է. «Հաւատացեալները եղբայրներ են... մենք ստեղծեցինք ձեզ մի մարդուց և մի կնոջից (Ադամից և Եւայից)... Ալլահի առաջ ձեզանից ամենաբարեպաշտն է ամենայարգուածը»։ Նոյն խօսքերը կրկնում է

մարգարէն մի ճառում իր վերջին ուխտագնացութեան ժամանակ Մեկքա. «Բոլոր մարդիկ ծագել են Ադամից, իսկ Ադամը՝ փոշուց. արաբը ոչ մի առաւելութիւն չունի ոչ-արաբից. բոլոր դասակարգերը հաւասար են, և միայն բարեպաշտութիւնն է տալիս առաւելութիւն»: Զորս մեծ խալիֆների օրով եղբայրութեան և հաւասարութեան գաղափարը աւելի ևս ամրանում է: Նրանք իրանց հաւասար կերպով օրէնքին ենթարկուած համարելով՝ ապրում էին ինչպէս հասարակ մարդիկ, պարզ հագնում, պարզ ուտում, բոլորի հետ նստում-վերկենում և առանց նեղանալու պախարակումն և երբեմն էլ կոպտութիւններ լսում՝ իրանց եկամուտները բաժանելով աղքատներին: Նրանցից յետոյ խալիֆէութիւնը թագաւորական շուքով է շրջապատում իրան, բայց հաւասարութեան գաղափարը մնում է կեանքի մէջ իշխող և սնունդ ստանում է շարունակ՝ իսլամութիւն նոր ընդունած ցեղերի ջանքով, որոնք ցանկանում են հաւասար ճանաչուել արաբների և մահմեդական ծնուածների հետ, և այն՝ օրինաց շնորհիւ, որ պատուիրում է հաւատացեալին՝ աղօթքի և պատերազմի ժամանակ ուս-ուսի տալ հաւատակցի հետ, իսկ հարուստին՝ իր ունեցածից բաժին հանել յօգուտ աղքատների: Հաւասարութիւնը դառնում է մահմեդականութեան գլխաւոր սիւներից մինը և մեծ չափով ոչնչացնում է իսլամ երկիրներում ազնուականութիւնը և նրա արտօնութիւնները կամ գոնէ առնում է նրանց զարգացման առաջը: Բոլորը հաւասար են օրէնքի և դատաստանի առաջ. իւրաքանչիւր ազատ մուսուլման կարող է բարձրագոյն հոգևորական, պետական և զինուորական պաշտօնների հասնել, եթէ միայն ունի պահանջուած գիտութիւնը և այլ անձնական ընդունակութիւններ: Այդ կրօնական համոզմունքը մինչև օրս կենդանի է մնացել հաւատացեալների գիտակցութեան մէջ, թէև իրականութեան մէջ յաճախ չիրագործուած: Նա գուցէ աւելի է նպաստել իսլամի տարածմանը, քան սուրը և բռնութիւնը:

Բայց հաւասարութեան արտօնութիւնը վայելում են միայն մուսուլմանները: Օտարադաւան հպատակները*) քաղաքացիներ չեն, այլ իսլամի պաշտպանութիւնը վայելող օտարներ: Նրանք վճարելով հաւատացեալներին անվայել և ստորացնող գլխահարկը և խարաճ տուրքը՝ վայելում են փոխադարձաբար

---

*) Միայն յայտնութիւն ունեցող օտարադաւանները (քրիստոնեաները, հրէաները և, շատերի կարծիքով էլ, զարդաշտները) կարող են հպատակ ճանաչուել: Հեթանոսները գոյութեան իրաւունք չունեն. կամ պիտի իսլամը ընդունեն կամ սպանուեն:

կեանքի և գոյքի ապահովութիւն։ Նրանք չեն կարող կալուածական սեփականութիւն ունենալ, հաւատացեալի ժառանգ լինել, դատաստանում վկայ ճանաչուել, մահմեդական կնոջ հետ ամուսնանալ, դատաւոր լինել և այլն։ Նրանց թելադրուած է իրանց հագուստով տարբերուել հաւատացեալներից, իրանց տըները և աղօթատեղերը աւելի բարձր չկառուցանել՝ քան հաւատացեալների տները և մզկիթները, հրապարակով իրանց ծէսերը չկատարել, թամբած ձիու վրայ չնստել, արաբական գրական լեզուն չսովորել, ոչ էլ երեխաներին Ղուրանը սովորեցնել և այլն։ Նրանք պարտաւոր են դէպի մուսուլմանները յարգանքով վերաբերուել, ոտի բարձրանալ՝ երբ սրանք գալիս են և տալ սրանց աւելի բարձր տեղ նստելու։ Օտարադաւանին սպանող հաւատացեալը՝ մեծամասնութեան կարծիքով՝ երբէք վըրէժխնդրութեան և մահուան պատժի չի ենթարկվում. և նոյն իսկ արեան փողը շատ աւելի պակաս է, եթէ սպանուողը մահմեդական չէ։

Սակայն հաւատացեալների նկատմամբ էլ հաւասարութիւն են վայելում միայն ազատները և տղամարդիկ։ Ստրկութիւնը օրինաւոր ճանաչուած հաստատութիւն է։ Ստրուկը իր տիրոջ սեփականութիւնն է և աշխատում է նրա համար. առանց վերջինի համաձայնութեան՝ նա չի կարող ոչ մի պայման կընքել, ոչ ամուսնանալ, ոչ էլ սեփականութիւն ձեռք բերել։ Նա ցածր տեսակի մարդ է, դատաւոր և վկայ լինել չէ կարող, միևնոյն ժամանակ երկու կնոջից աւել*) ունենալու կամ ազատ կին առնելու իրաւունք չունի, և սպանուելու դէպքում՝ սպանողը պարտաւոր է միայն նրա արժէքը վճարել տիրոջը։ Նա լիակատար իրաւունքներ և պատասխանատուութիւն կրող անձնաւորութիւն չէ, ուստի և ազատների համար նշանակուած պատժի կիսով ազատվում է, երբ նա գործում է արբեցողութիւն, շնութիւն և նման յանցանքներ։

Մահմեդական կինը՝ թէև գոյքի և սեփականութեան հարցերում բոլորովին ինքնուրոյն՝ անձնական իրաւունքների նկատմամբ բաւականաչափ սահմանափակուած է։ Նա պարտաւոր է ամուսնուն հնազանդուել, և ամուսինը կարող է նրան թեթև մարմնական պատիժներ տալ։ Ապահարզանը կախուած է միայն ամուսնու քմահաճոյքից։ Կնոջը չի տրուած բաժանումն պահանջելու իրաւունք։ Մի մարդու վկայութիւնը հաւասար արժէք ունի երկու կնոջ վկայութեան հետ. սպանուած կնոջ

*) Ազատ հաւատացեալին չորս կին թոյլատրուած է։

արեան գինը տղամարդու համար նշանակուած արեան գնի կէսն է. տղան երկու այնքան է ժառանգում, որքան աղջիկը։ Կինը չի կարող՝ մեծամասնութեան կարծիքով՝ խալիֆ կամ դատաւոր լինել, ոչ էլ թոյլատրուած է նրան հրապարակ դուրս գալ կամ հրապարակական պաշտօններ վարել։

Բայց այդ բոլորը բացառութիւններ են, որոնք մասամբ սահմանադրական երկրներում էլ գոյութիւն ունեն կամ ունէին. բացառութիւններ՝ ընդհանուր հաւասարութեան սկզբունքի, որ իսլամը ամենագեղեցիկ կերպով մշակել է և պարտաւորեցուցիչ դարձրել իր համայնքի համար։ Հաւատացեալները եղբայրներ են հաւասար իրաւունքներով և համերաշխ պարտականութեամբ պաշտպանելու ամեն մի հաւատակցի անձը, գոյքը և պատիւը՝ ինչպէս իր սեպհականը։

### 3. Անձի եւ գոյքի ապահովութիւն

Շարիաթը ապահովեցնում է անձը ամեն տեսակի քմահաճական հալածանքից։ Ձերբակալութիւնը և պատիժը կարող են միայն տեղի ունենալ դատաւորի կարգադրութեամբ, օրինաց համաձայն և շարիաթում մանրամասնօրէն որոշուած ապացուցման եղանակի հիման վրայ։ Իւրաքանչիւրը կարող է իւրաքանչիւրի դէմ դատաստանական վճիռ և օրինական արդարութիւն պահանջել։ Օտարների մուտքը տան ներքին—հարեմական—մասը արգելուած է, թէկուզ լինեն նրանք գործադրող պաշտօնեաներ. և այդ պատուէրը այնքան յարգուած է, որ նոյն իսկ բռնութեան ամենակատաղի ժամանակներում, այն ևս հազուագիւտ դէպքում, պօլիցիականները յանդգնում չէին ոտք կոխել հարեմը՝ այնտեղ ապաստանած յանցաւորին ձերբակալելու, այլ գերադասում էին տան շուրջը հսկել և ուտելիղէնի մուտքը արգելելով ստիպել յանցաւորին անձնատուր լինել։ Ազատ մահմեդական քաղաքացին իրաւունք ունի ապրել երկրի իր ցանկացած տեղում և ընտրել իր ցանկացած կոչումը և զբաղմունքը, բացի այն զբաղմունքներից, որոնք արգելուած են շարիաթով (օրինակ՝ ոգելից ըմպելիքներ պատրաստելը)։

Ուժեղ կերպով արտայայտուած է և գոյքի ապահովութեան գաղափարը։ Սեպհականութիւնից բռնի կերպով զրկելը՝ նոյն իսկ յօգուտ ընդհանրութեան՝ թոյլատրելի չէ, և, մի քանի իրաւագէտների կարծիքով, սեպհականութեան իրաւունքը այնքան անձեռնմխելի է, որ նոյն իսկ դատապարտուածի սեպհակա-

նութիւնը չի կարելի առանց իր համաձայնութեան վերցնել՝ դատավճռին համապատասխան բաւարարութիւն տալու դանգատաւորի պահանջին։ Եթէ նա մերժում է դատաստանով վճռուած գումարը վճարել, կարելի է նրան միայն բանտ դնել և բանտում պահել՝ մինչև որ յօժարուի։ Բռնակալ իշխանութեան ժամանակ էլ Պարսկաստանում մեծամասնաբար այս սովորութեամբ էին վարվում, դատապարտուածին բանտ նստեցնում և յաճախ էլ՝ շարիաթին հակառակ՝ չարչարում, մինչև որ նա համաձայն ուէր տալ պահանջուած գումարը։

## 4. Համոզմունքը եւ կարծիքը արտայայտելու ազատութիւնը

Համոզմունքի ազատութիւնը՝ լինելով նոր ժամանակուայ արդիւնք՝ բնականաբար չի կարելի փնտռել մի հին օրէնքում, ինչպիսին իսլամական օրէնքն է։ Մուսուլմանը միայն մի համոզմունք կարող է ունենալ, այն է՝ իր կրօնի և սուրբ օրինաց գերազանցութիւնը։ Ամեն մի շեղուող համոզմունք հերետիկոսութիւն է և պատժվում է, ինչպէս կրօնափոխութիւնը, մահով։ Պարսկական սահմանադրութեան թոյլ կողմերը բղխում են հէնց այս սկզբունքից։ Հիմնական օրէնքները թելադրում են. «Իրանի պաշտօնական կրօնը շիական իսլամն է. շահը պարտաւոր է դաւանել և տարածել այդ կրօնը. հոգևորականութեան կողմից ընտրուած հինգ ուլեմաներ պիտի հսկեն՝ վէթօյի իրաւունքով, որ շարիաթին հակառակ օրէնքներ չանցնեն մէջլիսում. գիտութեան և գեղարուեստի ուսուցումն ազատ է բացի այն բոլորից, ինչ որ շարիաթը արգելում է. մամուլը ազատ է բացի հերետիկոսական և իսլամին վնասակար գրուածքներից»։ Մի խօսքով՝ կրօնի և համոզմունքի ազատութիւն գոյութիւն չունի և սահմանադրական Պարսկաստանում։

Բայց ինչ վերաբերում է կարծիքը արտայայտելու ազատութեան, շարիաթը ամեն մէկին իրաւունք է տալիս և նոյն իսկ պարտաւորեցնում է առանձին թէ ժողովներում արտայայտել ազատօրէն իր կարծիքը՝ կառավարող ապօրինի գործողութեանց, ճնշումների և քմահաճութեանց նկատմամբ, քննադատել տէրութեան և պաշտօնեաների օրինազանցութիւնը և բողոքել նրանց դէմ։ Ազատ և արդարացի քննադատութիւնը շարիաթի շրջանակում և առանց դիպչելու կրօնին և սուրբ օրէնքներին՝ ոչ ոքի չի կարելի արգելել, թէկուզ քննադատու-

թիւնը ուղղուած լինի հէնց խալիֆի անձի դէմ։

Վերջացնելով այս ուսումնասիրութիւնը, ճշմարտութիւնը պահանջում է խոստովանուել, որ այնքան անարդարացի է մահմեդականների ասածը թէ՝ «մենք արդէն սահմանադրական օրէնքներ ունէինք, երբ Եւրոպայում դեռ տիրում էր ամենավատթար դեսպոտիզմ»։ Այդ՝ մասամբ ճիշտ է, ինչպէս տեսանք. բայց մենք միևնոյն ժամանակ տեսանք սահմանադրական պահանջների հետ չհաշտուող խոշոր պակասութիւններ շարիաթի մէջ (օրինակ՝ ճորտութեան, օտարադաւանների, կանանց և համոզմունքի ազատութեան հարցում, որոնց վրայ կարելի է աւելացնել իսլամի բարբարոսական պատիժները և առհասարակ շարիաթական օրէնքների հնացած և նոր ժամանակին անհամապատասխան մասերը թէ բրէական, թէ քաղաքացիական իրաւունքների նկատմամբ)։ Նոր ժամանակը պահանջում է դրանց վերաքննութիւնը. բայց դա ինչպէս կարելի է շարիաթի միջոցով, քանի որ շարիաթը աստուածային անփոփոխելի օրէնք է։ Առաջ բերելով Մուհամեդի խօսքերը՝ «հօքմ բիլ ակլ հօքմ բիլ շար» (այսինքն՝ խելքի վրայ հիմնուած վճիռը հաւասար է շարիաթի վրայ հիմնուած վճռին), մահմեդականները ասում են, որ դրանով օրէնսդրութեան ճանապարհը բացուել է։ Գուցէ դա ճիշտ լինի այն հարցերի նկատմամբ, որ սուրբ օրէնքը չի նախատեսել և անորոշ է թողել։ Բայց այդպիսի հարցերի թիւը համեմատաբար փոքր է։ Կեանքի համարեա բոլոր պայմանների համար տալիս է շարիաթը անփոխարինելի և անշօշափելի ձևեր։ Կեանքը քարացած է, զարգացումը կաշկանդուած և պետութիւնը զրկուած իր ամենակարող և ամենալաւ յատկութիւնից, որ է օրէնքներ տալ և օրէնքներ փոխել՝ համակերպուելով ժամանակի ոգուն։ Եթէ սահմանադրական գլխաւոր սկզբունքները չներդաշնակուէին շարիաթի հետ, հազիւ թէ հոգևորականութիւնը իր ձեռքը մեկնէր աջակցելու վերջին իսլամական պետական յեղաշրջումներին, և առանց հոգևորականութեան բարի տրամադրութեան՝ դժուար թէ տգէտ ժողովուրդը ազատագրական շարժման մասնակցէր։ Բայց այն, ինչ նպատակայարմար էր գործի սկզբի համար, կարող է արգելք հանդիսանալ գործի զարգացման ընթացքում։ Անարգել զարգացումը պահանջում է դուրս գալ շարիաթի նեղ շրջանից, այլ ոչ թէ ապագան թողնել նրա յոյսին, ինչպէս որ պարսից հիմնական օրէնքները անում են։ Շարիաթը իր պարտականութիւնը կատարեց. նա նպաստեց ազատագրական շարժմանը՝ ինչքան որ կարող էր, առանց հակասելու իր էութեան. դրանից աւելին անկարելի է սպասել

նրանից, և սահմանադրութեան վիճակը կապել նրա վիճակի հետ՝ միայն չարիք կարող է առաջացնել։ Բայց դժբախտաբար այդ ուղղութեամբ նշանները աւելանում են օրէ-ցօր Պարսկաստանում և լրջօրէն վտանգում նոր կարգերի գոյութիւնը։ Իմամի տեղապահները, այսինքն Նեջեֆի մուտէիդները, սկսում են զղջալ, որ իրանք աջակցել են սահմանադրական գործում, և բոլորները չեն խնայում ամեն մի նորութեան դէմ, որ իրանց թւում է, թէ հակառակ է շարիաթին։ Նրանցից վախենալով՝ մէջլիսը անգործութեան է դատապարտուած, և մէջլիսի ամենաազդիկ անդամներից մինը՝ մուշտէիդ սէիդ Աբդուլլահը, որ երբեմն սահմանադրութեան գլխաւոր գործիչներից մէկն էր, հիմնել է չափաւորների կուսակցութիւնը (էթըդալիւն), որ միացած Սիփեհդարի կաբինէտի հետ՝ մեծ արգելք է դարձել անպայման առաջադիմութեան։ Նրանց ջանքով վերջերումս փորձեցին խափանել ապօրինի կերպով պարսկական ամենաազատամիտ թերթերը՝ «Շէրկը» և «Իրան-Նօվը», նոյն և ուրիշ մուշտէիդների տունը հաւաքուեցին հոգեւորականները բողոքելու նոր դատաստանների հակաշարիական ընթացքի դէմ և աջողեցրին նրանց ժամանակաւոր դադարեցումը։ Ինչպէս Մուհամեդ-Ալին, այնպէս էլ այժմ տարածուող ռէակցիօներական կուսակցութիւնը շարիաթն է փաստ բերում սահմանադրութեան դէմ։ Շարիաթ, շարիաթ և էլի շարիաթ։ Մինչև որ այդ բառը չանհետանայ մահմեդականների բերանից, թեթևամտութիւն կը լինէր մի էական փոփոխութիւն սպասել նրանց կեանքում։ Բայց դա դեռ երկար, շատ երկար կարող է տևել, գոնէ Պարսկաստանում։

Դր. Ջ. ԳՐԷՆՖԻԼԴ

# ՆՈՐ ՄԱԼՏՈՒԶԻԱՆԻԶՄ

## I

*Նորերս տեղական թերթերից մէկում տպուած էր Նոր-Բայազէտից մի թղթակցութիւն, ասուած էր, թէ այդ շրջանի ժողովրդի մէջ սկսել է երեւալ ձգտումն՝ երեխայ չունենալու, և դրա համար կանայք դիմում են զանազան միջոցների՝ գլխաւորապէս վիժում առաջացնելով։ Այդ հանգամանքը ստիպում է մեզ տալ լիակատար ծանօթութիւն այն տեսութեան մասին, որը կոչվում է «Նոր մալտուզիանիզմ»։*

*Այդ հարցով գլխաւորապէս զբաղվում են Ֆրանսիայում, ուր ազգաբնակութիւնը համարեա չի աճում։ Ֆրանսիայի ազգաբնակութիւնը* XVII *դարի վերջերում հաշւվում էր* $19,_{5}$ *միլիօն, յեղափոխութեան ժամանակ* $24,_{8}$ *միլիօն, 1891-ին* $38,_{34}$ *միլիօն, որոնց մէջ օտարերկրացիներ 1,130,211. 1886 թուին ազգաբնակութիւնը մնում էր միեւնոյն քանակի՝* in status quo. *Ամուսնութիւնը պակասում է, նոյնպէս երեխածնութիւնը. պատահում են տարիներ, երբ մահացութեան տոկոսը գերազանցում է ծննդաբերութիւնը* (рождаемость)։ *Իսկ Գերմանիայում, որը ունեցել է 1875 թ. 44 միլ., այժմ ազգաբնակութիւնը հասնում է 65 միլիօնի մօտաւորապէս։*

*Ահա ինչու ֆրանսիացիք, որոնք չեն մոռացել իրանց նախկին զինուորական փառքը և ձգտումը՝ յետ առնելու իրանց նահանգները՝ Էլզաս և Լօտարինգիա, սաստիկ երկիւղի մէջ են, տեսնելով իրանց ազգաբնակութեան պակասումը, համեմատած իրանց ախոյեան Գերմանիայի՝ որը 25 միլիօնով աւելի ազգաբնակութիւն ունի։*

*Ֆրանսիայում գլխաւորապէս աշխատում է ժողովրդի բազմացման համար սենատոր* Piot *իր հետեւողներով. նա ասում է. «Ամենաթանկագին դրամագլուխը մարդկային է. ունենալ բազում երեխաներ՝ դա է փրկութիւնը»։ Բայց կայ և հակառակ ուղղութեան կուսակցութիւն, որի պարագլուխն է* Roubin, *որը*

ասում է. «Ամենափնասակար դրամագլուխը՝ մարդկային է. չունենալ շատ երեխաներ՝ նշանակում է ունենալ ազատութիւն»։

Ֆրանսիայում ոչ միայն օրէնսդիրները, այլ և գիտնականները, մատենագիրները, հրապարակախօսները և վիպագիրները սաստիկ զբաղուած են ազգաբնակութեան բազմացման հարցով։ Մինչև անգամ հռչակաւոր վիպագիր Զօլան գրել է մէկ վիպասանութիւն՝ «Բեղմնաւորութիւն» («Fécondité») վերնագրով, ուր գիտնակօրէն ապացուցել է վիպասանական ձևով նոր մալտուզիանութեան փնասակարութիւնը, ցոյց տալով այն բոլոր միջոցները, որոնք գործ են դրվում յիշեալ նպատակի համար՝ վիժում, ներքինացում (castration, оскопленіе) կանանց և զանազան նախապաշտպանողական միջոցներ։ Իսկապէս ասած՝ Զօլայի վիպասանութիւնը աւելի բժշկական ուսումնասիրութիւն է ընդդէմ նոր մալտուզիանութեան, որը սաստիկ տարածուած է առաւելապէս Ֆրանսիայում։

II

Միջանկեալ այստեղ կարևոր է տալ բացատրութիւն մալտուզիանութեան և նոր մալտուզիանութեան մասին։

Մալտուս, յայտնի էկօնօմիստ, ծնուել է Անգլիայում XVIII դարի վերջում։ Նա գրել է յայտնի աշխատութիւն՝ «Փորձ ազգաբնակութեան օրէնքի մասին» («Опытъ о законѣ народонаселенія»), ուր ապացուցանում է, որ մարդկութիւնը բազմանում է գէօմետրիկական պրօգրեսսով, իսկ սննդական միջոցները՝ արիթմէտիկական. նշանակում է՝ առաջինը այսպէս. 1, 2, 4, 8, 16, 32, 64 և այլն, իսկ վերջինը՝ 1, 2, 3, 4, 5, 6, 7 և այլն։

Այդ հիման վրայ՝ Մալտուսը գտնում է, որ մարդիկ պիտի աշխատեն խուսափել բազմացումից։ Մալտուսի տեսութիւնը իր ժամանակին մեծ ժողովրդականութիւն էր ստացել, բայց այժմ նա չի դիմանում լուրջ քննադատութեան։ Այդ տեսութեան դէմ բողոքում էր մանաւանդ ֆրանսիացի քիմիագէտ Բերտլօն, որը անգլիական մէկ հանդէսում իր մէկ յօդուածում, «Ապագայ մարդկութիւնը» վերնագրով, յայտնում է այն գաղափարը, որ վերջինը՝ շնորհիւ գիտութեան՝ առաւել ևս պիտի բարձրանայ թէ մտաւորապէս և թէ բարոյապէս։ «Բոլոր հարցերը սննդառութեան վերաբերեալ՝ ապագայում պիտի վճռուեն համադրական քիմիայով» (синтетической химіею)։ Չի կարելի չհաւատալ

հռչակաւոր քիմիկոսին, որը 50 տարի սրանից առաջ քիմիապէս պատրաստել է ճարպեր, շաքար, ածխաջրեր։ Քիմիկոսների մեծամասնութիւնը կողմնակից է Բերտլոյին և ընդունում է, որ շուտով կաջողուի սինտետիկ կերպով պատրաստել մինչև անգամ սպիտակուցային նիւթեր (бѣлков. вещества)։ Այն ժամանակ ամեն մէկը կարող է կերակրուել արհեստական նիւթերով։

Հռչակաւոր Բեբէլը հաւատում է Բերտլոյի նախատեսութեանը։ Վերջապէս մի՞թէ երկրագնդի բոլոր հողերը շահագործուել են և գիտական գիւտերը գիւղատնտեսութեան մասին սպառուած են։

Յայտնի պրոֆեսոր Տեմիրեազեվը (Темирязевъ) գրում է*) բորակիտ (селитра) ստացման առթիւ էլէքտրականութեան միջոցով օդից, որը գտել են Նորվեգիայի գիտնականներ. Բիրկելանդոմը և Էյդէն։ Եթէ առաջներում Հենրիկոս IV-ն ասել էր՝ «Բորակիտը հասկացիր վառօդ (порохъ), որ պաշտպանում է տէրութիւնը, գահերը», ներկայ մարդկութիւնը աւելի մեծ իրաւունքով կարող է ասել՝ «Բորակիտը բարձրացնում է մարդկանց բարեկեցութիւնը, բազմապատկում է հողագործի ծանր աշխատանքի արտադրութիւնը»։ Ներկայումս Եւրօպայի գիւղացին օգտվում է չիլիական բորակաղով (Чилійскою селитрою)։ Իսկ այժմ ստացվում է Նորվէգիայում բորակաղը օդից, և այդ երկրում կազմուել է ընկերութիւն այդ նպատակի համար, մանաւանդ որ շնորհիւ բազմաթիւ ջրվէժների՝ էլէքտրականութիւնը դիւրին է ստանալ։ Չիլիից ամեն տարի բերում են Եւրօպա մէկ միլիօն տօնն (1 տօննը=62 պուդի) բորակաղ. իսկ այժմ արհեստական ձևով օդից ստանալուց յետոյ՝ բորակիտի գինը զգալիօրէն կիջնի յօգուտ գիւղատնտեսութեան։

III

Գալով «նոր մալտուզիանիզմին», որը երևացել է 1877-ին Լօնդօնում և հիմնուել է Malthusian League, որը հրատարակում է 1879-ից «Malthusian» հանդէսը։ Այդ նոր լիգայի զանազանութիւնը մալտուզիանից նրա մէջ է, որ Մալտուսը ժուժկալութիւնը (воздержаніе) հասկանում էր իբրև բարոյական զսպում (нравственное обузданіе), իսկ նոր տեսութիւնը ընդ-

*) «Русск. Вѣдомсти». «Новая побѣда надъ природою», пороф. Темирязева, 1906 г.

դէմ չէ ամուսնութեան, որի չգոյութիւնը կարող է առաջացնել վաղից ապականութիւն և պոռնկութիւն։ Ուստի պիտի աշխատել, որ ամուսինները խուսափեն երեխաներ ունենալուց՝ գործածելով զանազան նախապաշտպանողական հակաբեղմնական միջոցներ, կամ եթէ ունենալ, ապա ունենալ այնքան, որքան միջոցները թոյլ կը տան։ Դրանով կարծում են, որ կարելի է վճռել կարևոր սօցիալական հարց, որովհետև ներկայ աշխատութիւնը բացատրվում է ազգաբնակութեան բազմացմամբ։ Բայց բանը նրանումն է, որ վերոյիշեալ տեսութեանը հետևում են ոչ թէ նրանք, որոնք աղքատ են, այլ գլխաւորաբար անձնական զուարճութեան և ազատութեան համար, ինչպէս այդ ապացուցել է հռչակաւոր Զօլան իր վիպասանութեան մէջ։ Դուրս է գալիս, որ նոր մալտուզիականները ոչ թէ աղքատ դասակարգին են պատկանում, այլ հարուստ և ինտելիգենտ։ Բերենք՝ ի հաստատումն վերոյիշեալի՝ մէկ փոքր ստատիստիկա.

Բեռլինում՝ համաձայն 1885 թ. ազգագրութեան՝ 100 ընտանիքից հարուստներից և աղքատներից չեն ունենում երեխաներ.

| Հարուստներ | Աղքատներ | Պսակի տևողութիւնը |
|---|---|---|
| 44,2 | 35 | 0—5 տարին |
| 21,1 | 16,1 | 5—10 » |
| 18,2 | 12,8 | 10—15 » |
| 18,2 | 10,8 | 15—20 » |
| 15,2 | 9,6 | 20—25 » |
| 12,0 | 8,5 | 25—30 » |

Վերոյիշեալից երևում է, որ անզաւակութիւնը աւելի ունևորների մօտ է եղել, քան չունևորների։

Նորվեգիայում՝ համաձայն 1894 թ. ազգագրութեան (перепись)՝ 100 ընտանիքից չեն ունեցել երեխաներ.

| | |
|---|---|
| Բարձր աստիճանաւորներ և առևտրական | 11,1 |
| Փոքրիկ աստիճան., գործակատարներ . | 7,7 |
| Ծառաներ (сторожи) . . . | 7,2 |
| Ֆաբրիկ. մշակներ . . . . | 5,8 |
| Միւս մշակներ . . . . | 6,9 |
| Հողային մշակներ . . . . | 6,9 |

Ֆրանսիայում ծննդի թիւը 10,000 զոյգի վրայ ընկնում է այսպէս.

Բուրժուաների 100 ծնունդին պրօլետարների մօտ լինում է 2 անգամ աւելի, նշանակում է՝ 200.

Ֆրանսիայում, ինչպէս վերև յիշեցինք, գլխաւորապէս քարոզում է սենատոր Պիօն (Piot), տեսնելով իր ազգի նուազումը։ Նոյն սենատորը առաջարկել է օրէնսդրութիւն ամուրիների դէմ, այսինքն առանձին հարկ դնել նրանց վրայ։

IV

Ցաւակցաբար պիտի ասած, որ հայ հասարակութեան մէջ ևս սկսել է գործադրուել սահմանափակումը երեխածնութեան։ Ինձ յայտնի են բազմաթիւ դէպքեր յայտնի շրջանից, երբ ինտելիգենտ կանայք վիժման համար դիմած են հասարակ տատմայրերին և դժբախտաբար անժամանակ վախճանուել են, շնորհիւ վարակման (инфекція)։ Այժմ արդէն երևում են դէպքեր մինչև անգամ գիւղական ազգաբնակութեան մէջ. քանիցս դիմած են մեզ՝ միջոց ցոյց տալու կամ երեխայ չունենալու կամ վիժելու։

Մասամբ հասկանալի է, որ այժմ և մեր մէջ, մանաւանդ քաղաքներում, ամուսնութիւնը, շնորհիւ կեանքի թանկութեան, չի կարող այնպէս յաճախ տեղի ունենալ, ինչպէս առաջներում էր, բայց բանը նրանումն է, որ չեն ամուսնանում նրանք, որոնք չեն կարող՝ անաջող նիւթական պայմանների պատճառով, այլ գլխաւորապէս նրանք, որոնք ունևոր են, իսկ խուսափում են ամուսնութիւնից։ Պատճառն այն է, որ այդպիսիները ցանկանում են լինել ազատ, անհոգ, երբ կայ մեծ քաղաքներում հնարաւորութիւն՝ բաւականութիւն տալու սեռական զգացմունքներին։ Այդ դասակարգից ամուրիները՝ de facto ամուսնացածները՝ վերջ ի վերջոյ՝ առաջուց կենակցելով սիրականների հետ՝ կամ ամուսնանում են նրանց հետ չնայած այն բանին, որ նրանք համապատասխան չեն թէ հասկացողութեամբ և թէ միւս կարևոր բարեմասնութիւններով, կամ մնալով ամուրի, ունենալով անկանոն կեանք, վերջ ի վերջոյ տխուր վախճան են ունենում։

V

Այժմ ամեն տեղ, մանաւանդ Անգլիայում, կան այնքան շատ ամուրի աղջկերք, որ նրանց անուանում են «երրորդ սեռ» (трѣтій полъ). և նրանք չեն կարող այլ մարդկանց նման՝ չա-

*մուսնացած լինելով՝ օգտուել բնական պահանջների բաւարարութեամբ, որովհետև թէ նրանց բնութիւնը, թէ բարոյական աւելի մեծ բարեմասնութիւնը և թէ հասարակական կարծիքի խստապահանջութիւնը դէպի կանանց սեռը՝ վերջինիս թոյլ չեն տալիս գործելու այր-մարդկանց նման։ Եւ քանի որ այժմ կանանց սեռը հաւասար իրաւունքից զուրկ է, ուստի նա տուժում է ամենուրեք թէ այսպէս, թէ այնպէս, նայած կուլտուրայի աստիճանին՝ զանազան երկիրներում։ Մինչև այժմ ոչ մի տեղ չի աջողվում մտցնել հայրութեան օրէնք ապօրինի զաւակների վերաբերմամբ, որը խիստ արդարացի կը լինէր այր-մարդկանց անառակութեան դէմ, և դա կը լինէր մի զսպող միջոց։*

## VI

*Նոր մալտուզիանիզմը մէկ քանի բացառիկ դէպքերում ունի իր* raison d'être, *խելացիութիւնը. օրինակ՝ ամուսինների վատառողջութիւնը, հիւանդութիւնները—բարակացաւ, ընկնաւորութիւն, սիֆիլիս և այլն—նոյնպէս ևս առաւել կանանց կոնքի նեղութիւնը* (узкій тазъ)։ *Բայց գլխաւոր վրանգը նրանումն է, որ վիժումը աւելի վտանգաւոր է, քան երեխայածնութիւնը։ Ահա ինչու կանայք աւելի են տուժում վիժումներից, քան ծննդաբերութիւնից։ Այդ արդէն գիտնականօրէն ապացուցուած փաստ է. բայց դժբախտաբար շատ կանայք, շնորհիւ տգիտութեան և յիշեալ փաստի հետ անծանօթութեան, զանազան տգէտ տատմայրերի ձեռօք վիժում են անել տալիս և անժամանակ կամ մեռնում և կամ կանանց հիւանդութիւն ստանում։ Եւ դրա պատճառն այն է, որ կանանց սեռը անգիտակից է այն ամենին, որը վերաբերում է նրա սեռական կեանքի առողջապահական, բնախօսական և հիւանդաբանական պայմաններին։ Այդ կարևոր հարցի մասին շատ է գրուել, խօսուել զանազան գրուածքներում, մանկավարժական և բժշկական համաժողովներում, բայց ցայժմ խօսքից գործի դեռ չեն անցել։*

## VII

*Նոր մալտուզիանիզմի մասին գրել է Վ. Վագնէրն իր «Մայրութիւն և երեխասպանութիւն, յօդուածը**), *որի եզրակա-*

*) «Соврем. Записки», 1906 № 1. В. Вагнеръ, «Материнство и Дѣтоубійство».

ցութիւնը հետևեալն է։ Բեղմնաւորութիւնը նուազում է մարդկանց կուլտուրական բարձր աստիճանի հասնելուց. ինչքան ուժգին է (ИНТЕКЪ) մտաւոր գործունէութիւնը, այնքան նուազ է առաջինը։ Հոգեկան առաջադիմութիւնը ինքն ըստ ինքեան պարունակում է իր մէջ այնպիսի պայմաններ, որոնք սահմանափակում են սերնդի չափազանց բազմացումը։

Վերոյիշեալ կենսաբանական օրէնքը նոր մալտուզիանիզմի սկզբունքը աւելորդ է համարում, քանի որ մարդիկ ինչքան մտաւորապէս առաջ են գնում, այնքան էլ նուազում է բեղմնաւորութիւնը։ Ի հարկէ այդ մի այնպիսի ցանկութիւն է, որը երկար ժամանակում կարող է իրագործուել. բայց այժմ հրատապ հարց է դրուած կեանքում. ի՛նչպէս ապահովել մայրական իրաւունքը. կազմել ֆոնտ մայրերի և նրանց երեխաների պահպանութեան համար, պետական ապահովագրութիւն նրանց և այլն։ Գերմանիայում կազմուել է մի միութիւն, որ կոչվում է «Մայրութեան Հովանաւորող Միութիւն», որի ձգտումն է՝ ստանալ մայրական իրաւունք։

Առայժմ բաւականանանք այսքանով, խոստանալով ապագայում դառնալ այդ յոյժ կարևոր հարցին։

Բժ. Բ. ԱՂԱՍԱՐԵԱՆ

# XIX ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ԿՈՆԳՐԷՍ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ

—

Միջին դարի ամբողջ Եւրոպայի մէջ շատ տարածւած մի առած, որ ամեն օր լսվում է և օտարականների բերանում, ասում է թէ բոլոր ճանապարհները տանում են դէպի Հռոմ։

Առածը հանրածանօթ է, բայց նրա ծագումը քիչ ծանօթ է։ Նա աւելի հին է, քան միջին դարը. նրա ծագումը հասնում է Հռոմէական Հանրապետութեան և Կայսրութեան, երբ գեղեցիկ ճանապարհներ էին շինում դէպի ծովը, դէպի ցամաքը, բոլոր հնարաւոր ուղղութիւններով, լայն և ամուր ճանապարհներ, իբրև լուսաւոր ակօսներ, ուր անկարելի էր մոլորուել. այդ մեծ, լուսաւոր արահետներով Հռոմը հաղորդակցութիւն ունէր Հիւսիսի և Հարաւի, Արևելքի և Արևմուտքի հետ։ Բոլոր այդ ճանապարհները յանգում են աշխարհի չորս անկիւններին, և աշխարհի չորս անկիւնները յանգում են Հռոմին։ Հէնց որ ցամաքի ուխտաւորները ոտք էին կոխում այդ ճանապարհներից մէկի վրայ, նրանք գիտէին, որ ապահովաբար կը հասնեն մինչև Հռոմ։ Կայսրութիւնից յետոյ Պապականութիւնը և Պապականութիւնից յետոյ յարուցեալ և վերանորոգեալ Իտալիան քաշում է դարձեալ աշխարհը դէպի Հռոմ, ինչպէս լոյսի և հանգստութեան մի համաշխարհային ներդաշնակ կենտրոն։

Բայց այս տարի, երբ Իտալիան ինքն ուխտի է գընում Հռոմ՝ այդտեղ տօնելու իր ազգային կեանքի յիս-

նամեայ յօբելեանը, Հռոմի անունը, հին պառակտեալ և անջատեալ հայրենիքի միացուցիչը և խաղաղարարը, մի այլ կերպով է սևեռում իր վրայ բոլոր այն ազգերի պատկառանքը, որոնք կարօտ են խաղաղութեան։

Իտալիայի յաղթութիւնը վերջ դրեց նուաճման պատերազմների այն երկար շարքին, որ, Բարբարոսների արշաւանքից ի վեր, խռովել է Եւրօպան և տանջել այդ օրհնեալ երկրի նուիրական հողը, Դանտը ողջունում էր արդէն Եւրօպայի այգի քաղցր անունով։ Դրացիների տենչանքները դադարել են. Ցիւրիխում հռչակուած սկզբունքը, որ օտար պետութիւնները չմիջամտեն Իտալիայի գործերին, հնարաւոր դարձրեց հռչակել Հռոմը մայրաքաղաք նոր անկախ թագաւորութեան։ Միևնոյն սկզբունքի անունով է, որ ռումէն, սերբ, բօլգար ազգերը կարողացան նոյնպէս կազմակերպել իրանց ազգային անկախութիւնը. Նոյնպէս և գերմանական պետութիւնները կարողացան միանալ և վերածվել մի հատիկ ազգութեան՝ կայսրութեան ձևով։

Ազգային տօնախմբութիւնները, որ Իտալիան պէտք է կատարէ այս տարի, կը դառնան, ուրեմն, յանուն միջազգային խաղաղութեան, եւրօպական և համազգային տօնախմբութիւններ։

Խաղաղութեան XVIII Համաշխարհային Կօնգրէսը, որ անցեալ տարի օգոստոսին գումարուեց Ստօկհօլմում, ջերմ ծափահարութիւններով ողջունելով Հռոմը, իբրև յաջորդ կօնգրէսի վայր, մատուցեց յարգանք ոչ միայն Յաւիտենական Քաղաքի փառապանծ անուան, իբրև հին օջախ լոյսի և քաղաքակրթութեան, այլ և ճանաչեց նրա խաղաղութեան միսսիան իր ժամանակում։ Ստօկհօլմում ներկայ եղող ամենաականաւոր խաղաղասէրները բնաւ չէին մոռացել, որ Հռոմումն էր որոշուել 1891 թ., Խաղաղութեան Երրորդ Համաշխարհային Կօնգրէսի ժամանակ, մի ազնիւ ներշնչեալ կնոջ՝ բարօնուհի տիկին ֆօն-Սիւտնէրի առաջարկութեամբ, Բէռնի Խաղաղութեան Մը-

նայում Միջազգային Բիւրօյի ստեղծումը, որ պէտք է ներդաշնակէր և կարգապահութեան վերածէր խաղաղութեան բոլոր ընկերութիւնների ուժերը և աշխատութիւնը և նպաստէր իսկապէս ապագայ Միջազգային Կոնգրէսների ընդհանուր կազմակերպութեան, թողնելով հանդերձ ամեն մի կօնգրէսի մի որոշ ազգային կերպարանք։

Ուրեմն նոր կազմակերպուած կօնգրէսները կը վերադառնան իրանց օրօրոցին և կը նուիրեն, Տիբրոս գետի վրայ, գիտակցական և լուսաւոր քսանամեայ աշխատանքի գործը, որ առաջ է տարել խաղաղութեան դատը դէպի մի լուծում, որ աւելի և աւելի գործական է դառնում, դէպի այն նաւահանգիստը, ուր, վաղ կամ անագան, քաղաքակրթուած աշխարհի ազգերը կը միանան մի հատիկ լուսաւոր դրօշակի ներքոյ։ Բայց որովհետև ամենից շատ տպաւորութիւն գործողն օրինակն է, ուստի եթէ մի հանդիսաւոր դէպք, եթէ Հռոմի ազդեցիկ անունը, եթէ այն իդէալը, որին հետամուտ են խաղաղութեան ընկերութիւնները և կօնգրէսները, կը գան հաւաքելու Հռոմում, հոկտեմբերի կէսին, ոչ միայն խաղաղասիրութեան ճարտարախօս և մեծ առաքեալների ընտրեալներին, մեր հոգևոր առաջնորդներին, այլ և համոզուած, ջերմեռանդ և քաջարի խաղաղասէրների մի ամբողջ զանգուած, մի ամբողջ ժողովուրդ, այն ժամանակ այդ ոգևորուած նոր հաւատացեալների պլեբիսցիտը, հռչակուած Հռոմում, ուր հնումն մարտիրոսները վերջնականապէս հաստատել էին Աւետարանի կրօնը, յենուած՝ մարդկանց սիրոյ վրայ, միակ ամուր հիմն համաշխարհային խաղաղութեան, խաղաղասիրութեան այդ համաշխարհային ցոյցը իր վրայ կը սևեռի բոլոր պետութիւնների կառավարութիւնների ուշադրութիւնը. որովհետև, եթէ կառավարութիւնները երբեմն կուրացած կարող են լինել, կառավարուող մարդիկ, դառնալով հետզհետէ աւելի խելացի և հեռատես, կարող են վերջապէս նրանց լուսաւորել և մտցնել նրանց մեծ լոյսի մէջ։

Ասում են, որ անհնարին է մասսայի մէջ արթնացնել նոյն ոգևորութիւնը խաղաղութեան համար, որով բորբոքվում են մի որոշ ժամանակ պատերազմական մարդիկ՝ մի ուժեղ ատելութեան ազդեցողութեան ներքոյ։ Պէտք է և մենք կամենում ենք հերքել այդ չարագուշակ իլլիւզիան, որ ստեղծուել է մի տխուր նախապաշարումից։ Որովհետև խաղաղութեան համար ունեցած մեր սէրը հիմնուած է մարդկանց անկեղծ և խորին սիրոյ վրայ, մենք կարծում ենք, ընդհակառակը, որ այդ սէրը շատ զօրեղ է հրաշքներ գործելու, որին ատելութիւնը երբէք ընդունակ չի լինի։ Դրա համար միայն բարի կամք է հարկաւոր։ Երբ հրեշտակները Քրիստոսի ծննդեան ժամանակ երգում էին երկնքում Աստուծու փառքը, խաղաղութիւնը երկրի վրայ, միևնոյն պահուն խոստացուեց մարդկանց բարի կամքով։ Ուրեմն մեզ պէտք է միայն հասկանալ և համախմբուել։ Հռոմի Կօնգրէսը, իր նախընթացների նման, կունենայ միայն այդ մեծ նպատակը. բայց գուցէ աւելի բազմամարդ և աւելի հանդիսաւոր՝ քան միւսները, նա կը կարողանայ, Բերնի Բիւրօյի իմաստուն ղեկավարութեան ներքոյ և իտալական ժողովրդի ջերմ ու հիւրասէր համակրութեամբ ոգևորուած, ինչպէս և ամբողջ հասարակութեան աջակցութեամբ, բարձրացնել իր ձայնը աւելի բարձր և տարածել աւելի հեռուն։ Նրա կարևորութիւնը, բացի դրանից, կը բարձրանայ Միջպարլամենտական Կօնգրէսով, որ կը յաջորդէ անմիջապէս, Հռոմում, հոկտեմբերի կէսին, Խաղաղութեան XIX Համաշխարհային Կօնգրէսին։

ԿՈՄՍ ԱՆՋԷԼԼՕ ԴԸ ԳՈՒԲԵՐՆԱՏԻՍ

Նախագահ Հռոմի Խաղաղ. Միջազգ. Մութեան և անդամ Բեռնի Բիւրօյի

# ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍ

---

Անցեալ տարի, օգոստոսին, Ստոկհօլմում գումարուած Խաղաղութեան XVIII Համաշխարհային Կօնգրէսը հէնց որ փակուեց, Հռոմը ողջունուեց իբրև յաջորդ Համաշխարհային XIX Կօնգրէսի գումարավայր, և նրա գումարման ժամանակն որոշուեց 1911 թ. հոկտեմբեր ամիսը։ Եւ երբ այդ Կօնգրէսը կազմակերպելու պատիւը Բերնի Միջազգային Բիւրօն ինձ յանձնեց, ինձ թուաց, որ լաւագոյն միջոցը՝ տօնախմբելու Հռոմում այդ փառաւոր դէպքը՝ կը լինէր օգտուել այն պատմական արտօնեալ Դիտարանից, որին 3000 պատմական տարիներ իրաւունք են տուել կոչուելու Յաւիտենական Քաղաք։

Մինչև այժմ, պէտք է խոստովանել, մարդկանց պատմել են միայն պատերազմի պատմութիւնը։ Այդ պատմութեան մէջ փայլել են, երբեմն-երբեմն, հերոսական առաքինութիւններ, արժանի՝ մեր հիացման և ընդունակ՝ ներշնչելու մեծահոգի զգացումներ. բայց պէտք է դժբախտաբար հաստատել, թէ որպիսի՜ փառասիրութիւններով, որպիսի՜ գժութիւններով ու գազանութիւններով մարդը յաճախ ցոյց է տուել իրան՝ մարդու արիւնարբու թշնամի։ Պատերազմները ներկայացնում են պատմութեան մէջ մարդկային կեանքի միայն ամենավշտոտ դէպքերը. Նրանք ներկայանում են մեր առջև իբրև կործանիչներ իրերի բնական դրութեան, իբրև վայրենի բռնութիւններ, որոնք պատառոտում են

*ամենանուիրական և ամենաանբռնաբարելի սօցիալական կազմակերպութիւնները։*

*Պատերազմները, մարդկային կեանքի մէջ, նմանում են փոթորիկների և երկրաշարժների, որոնք գալիս են խանգարելու բնութեան բեղմնաւոր և խաղաղ գործը։*

*Ասել և կրկնել են, որ երջանիկ ժողովուրդները բնաւ պատմութիւն չունեն։ Դա միայն պարադօքս է։*

*Նրանց պատմութիւնը, ճիշտ է, դեռ չէ գրուել, բայց հէնց որ մի ժողովուրդ կամաց-կամաց հասունանում է և բարեշրջվում քաղաքակրթութեամբ, նրա պատմութիւնը սկսվում է, և եթէ կարելի լինէր գրուցել այդ պատմութիւնը, նա կը լինէր հրահանգիչ և բարերար։*

*Երբ արևը փայլում է և երկինքը պարզ է ու ջինջ, պայծառ օրերին ոչ ոք հոգ չէ տանում յիշատակել այդ և պահել նրա մասին յիշողութիւն. բայց երբ մի ամեհի հով է փչում, երբ որոտումն է պայթում, երբ փոթորիկն է մռնչում, երկինքն է մթագնում, կարկուտն է տեղում, ջրհեղեղ է սկսվում, ծովն է մռնչում և երկիրը ցնցվում, ժամանակագրութիւնը գրի է առնում բնութեան այդ յանցաւոր եղելութիւնները՝ իբրև հանապազօրեայ կեանքի ամենամեծ եղեռնագործութիւններ. այդ ժամանակ մենք հառաչում ենք, հեծեծում ենք, գոռում ենք կամ նախատինք կարդում վատ եղանակի դէմ, թէև անցողական, մինչդեռ բոլոր լուսաւոր և պայծառ օրերը մենք չենք նկատում կամ յիշում։ Նոյնը պատահել է և մարդկային պատմութեան մէջ, երբ այն ամենամեծ չարագործութիւնները, որոնք յուզել, ահաբեկել և սարսափով լցրել են մարդկութիւնը, անցնելով երկրի վրայով իբրև մի պատուհաս, իրանց տրագիքական բնաւորութեան համար, առաջին տեղն են գրաւել։*

*Հասել է վերջապէս ժամանակը, երբ պէտք է ըսկսել գրել խաղաղութեան պատմութիւնը, այսինքն մարդկային աշխատութեան և պրօգրէսսի պատմութիւնը, որ*

քաղաքակրթութեան իսկական պատմութիւնն է։ Այդ պատմութեան փաստաթղթերը առատ են, բայց թագնուած են կամ ցիր ու ցան. ուրեմն պէտք է յայտնագործել, ժողովել և լոյս ընծայել։

Այն պատմական Ցուցահանդէսը, որի վրայ ես պէտք է հսկեմ իմ հաւատի ամբողջ եռանդով, նպատակ ունի ժողովել առաջին ճոխ նիւթը, որ կարողանայ օգնել խաղաղութեան լուսաւոր պատմութեան, որով կապացուցուի, որ Պասիֆիզմը (խաղաղասիրական շարժումը) մի աղօտ ցնորք չէ, ոչ ևս մեր էպօխայի մի տենդ, այլ մի միայուն ձգտումն, որի ծագումը շատ հին է և որ քաղաքակրթութեան ամենահեռաւոր դարերից ի վեր շարժել է մարդկային իմացականութիւնը, որովհետև հէնց որ նա երևաց երկրի վրայ, մարդը կարիք զգաց յարմարեցնելու իր կեանքը այդ համաշխարհային ներդաշնակութեան, որ կառավարում է աշխարհը, ուր կարգը հաստատել է խաղաղութիւն և յաւիտենական արդարադատութիւն, չնայած այն մի քանի խռովութիւններին, այն մի քանի երկպառակութիւններին, յեղաշրջումներին, որոնք, մերթ ընդ մերթ, ինչպէս կրքերը, մտցնում են անկարգութիւն մեր կեանքի մէջ, գրգռում են դիպուածներ, որոնք կարծես թէ կամենում են կանգնեցնել բնութեան օրէնքների կանոնաւոր ընթացքը, խանգարելով նոյն իսկ Արարչի գործը։

Ուրեմն Ցուցահանդէսը նպատակ ունի յայտնագործել, գրել, և՛ պատկերաւոր փաստաթղթերի միջոցով, Խաղաղութեան զանազան ֆազիսները պատմութեան մէջ.

1) Խաղաղութիւնը դիցաբանութեան մէջ.
2) Բիբլիական և Քրիստոնէական Խաղաղութիւնը.
3) Արևելքը և Խաղաղութիւնը.
4) Յունաստանը և Խաղաղութիւնը.
5) Հռոմը և Խաղաղութիւնը.
6) Իտալիան և Խաղաղութիւնը.

7) Ամերիկան և Խաղաղութիւնը.

8) Եւրոպան և Խաղաղութիւնը.

9) Խաղաղութեան Գլխաւոր Դաշնագիրը.

10) Իրաւարարութեան Գլխաւոր Դաշնագիրը.

11) Հաագայի կօնֆերենցիան.

12) Բոլոր դարերի և երկիրների կենսագրական պատկերներ և տեղեկութիւններ. բանաստեղծների, փիլիսոփաների, հռետորների, օրէնսդիրների, իրաւագէտների, պատմագէտների, գրագէտների, պետական մարդկանց, ռազմականների և խաղաղասէր վեհապետների որոշումներ. Խաղաղութեան և Համաձայնութեան պատկերաւոր ներկայացումներ, Խաղաղութեան Տաճարներ և Սեղաններ, պատմական յիշողութիւններ և արուեստի գործեր, որոնք վերաբերում են Խաղաղութեան.

13) Ժամանակակից ականաւորների ինքնագիրները Խաղաղութեան մասին.

14) Խաղաղութեան Կօնգրէսները, Ընկերութիւնները և Դպրոցները.

15) Կարմիր Խաչի, ինչպէս և այն բոլոր հիմնարկութիւնների պատմութիւնը, որոնք սահմանուած են պատերազմների աղէտները ամոքելու։

Առ այժմ սրանք են այն զանազան բաժանմունքները, ուր կը դասաւորուի Խաղաղութեան Ցուցահանդէսը։

Այս ծրագիրն այնքան ընդարձակ է, որ ամեն մարդ կը հասկանայ, թէ միայնակ գլուխ բերել անկարող եմ և կարօտ եմ խորհուրդների, աջակցութեան և բոլոր պասիֆիստների օգնութեան, ոչ միայն Իտալիայում, այլ քաղաքակիրթ աշխարհի բոլոր անկիւններում։ Միայն Խաղաղութեան բարեկամների միահամուռ ջանքերով կարող եմ յոյս տածել կազմակերպելու Հռոմում մի հրահանգիչ Ցուցահանդէս այն ձևով, որ նա կարողանայ դառնալ Խաղաղութեան մի մնայուն դպրոց և ծառայել իբրև ղեկավար և օրինակ Խաղաղութեան բոլոր Դպրոց-

ների համար, որոնք կը հիմնուեն ուրիշ երկիրներում Ամեն ոք կարող է, առաւել կամ նուազ չափով, նպաստել այդ աշխարհային քաղաքակրթութեան գործին, իսկ նրանք, որոնք ի վիճակի չեն հայթայթելու փաստաթղթեր կամ նիւթեր Ցուցահանդէսի այցելուներին շահագրգռելու համար, գուցէ կարողանան նպաստել մեզ, դրամական նպաստներով, հարստացնելու համար Խաղաղութեան Միւզէն, որի ծախքը ներկայումս ամբողջովին ինձ վրայ է ընկած։

Խաղաղութեան Առաջին Պատմական Ցուցահանդէսը տեղի կունենայ Հռոմի Սէն-Անժի դղեակում, ուր այս սեպտեմբեր ամսին կը կայանայ Խաղաղութեան XIX Համաշխարհային Կոնգրէսը։

ԱՆՋԷԼԼՕ ԴԸ ԳՈՒԲԵՐՆԱՏԻՍ

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ

I. **Ռուսահայ կեանքի ընթացքը.**—*Կաթողիկոսական հարցը և ընտրելիները.—Շիրվանզադէի յոբելեանը և կեղծ ալմատականները.—Դ. Աղայեանի մահը և նրա անուան շահագործումը։*

II. **Թիւրքահայ կեանքի ընթացքը.** — *Պատրիարքական հարցը և վերանորոգուած ազգային ժողովը.—Մանկունի արքեպիսկոպոսի ձգտումները.—Գէորգ Երէցեանի անուան շուրջը ժխորը.—Հայաստանի աղէտալի վիճակը և թիւրքական նոր ռէժիմը։*

III. **Պարսկահայ կեանքի ընթացքը.**—*Նոր աղէտներ Ղարադաղում.—Հայերը և նոր մէջլիսը։*

---

## I

### ՌՈՒՍԱՀԱՅ ԿԵԱՆՔ

*Մայիս և յունիս ամիսների ընթացքում կաթողիկոսական հարցի մէջ որևէ մի այնպիսի առանձին փոփոխութիւն կամ նոր լուսաբանութիւն չէ տեղի ունեցել, որ կարելի լինէր համարել իբրև նոր ելակէտ այդ հարցի մէջ։ Պարզուել է միայն մի հանգամանք—այն էլ դեռ ոչ պաշտօնապէս հրատարակուած—թէ ռուսաց ներքին գործերի մինիստրութիւնը հնարաւոր չէ համարում, որ կաթողիկոսական կանդիդատների շարքը դասուեն վարդապետներ, այլ այդ կանդիդատները պէտք է վերցուեն արքեպիսկոպոսների և եպիսկոպոսների ցուցակից։ Թէ որքան օրինաւոր է կամ օրէնքի ոյժ կարող է ունենալ մինիստրական այս բացատրութիւնը, և արդեօք նա տրրուած է իբրև հրահանգ կամ վէտօ առաջիկայ ընտրութիւնների համար թէ՞ լոկ իբրև կարծիք մինիստրութեան, որ պարտադիր չէ կարող լինել համազգային ընտրողական ժողովի համար, այդ մենք չգիտենք։ Սակայն մեզ թւում է, որ, հիմնուելով Պոլոժենիէի վրայ, որի զօրութեամբ ամենայն հայոց կաթողիկոսի ընտրութիւնը կատարվում է հայոց եկեղեցու աւանդութիւննե-*

րի և կանոնական օրէնքների հիման վրայ, ընտրողական ժողովը կարող է վարդապետներ ևս մտցնել կաթողիկոսական կանդիդատների ցուցակի մէջ, որպէս զի ընտրութեան շրջանակը նեղ չլինի և հնարաւորութիւն լինի աւելի գիտակցօրէն և բարեխղճօրէն վերաբերուել գործին։ Եւ, վերջապէս, պէտք է միանգամ ընդ միշտ, օրէնսդրական եղանակով, լուծել վարդապետներից կանդիդատներ ընտրելու հարցը, իսկ այդ հարցը կը լուծուի օրէնսդրապէս միայն այն ժամանակ, երբ համազգային ընտրողական ժողովը պաշտօնապէս կը դնի հարցը։

Գալով կաթողիկոսական ընտրելիներին, խնդիրը մնում է գրեթէ նախկին վիճակի մէջ։ Հասարակական կարծիքով առաջարկուած կանդիդատների թուի վրայ (Օրմանեան, Սուրէնեան, Դուրեան արքեպիսկոպոսներ, Կարապետ, Մեսրոպ եպիսկոպոսներ և Բագրատ վարդապետ) նոր կանդիդատ չէ աւելացել։ Սակայն մի քանի թեմերում կատարուած կաթողիկոսական պատուիրակների ընտրութիւնը տալիս է մեր ձեռքը մի որոշ մասշտաբ, թէ այդ կանդիդատների մէջ որո՞նց անունն է ամենից շատ տրվում։ Թիֆլիսի, Աստրախանի և Շամախու թեմերում կայացած պատուիրակային ընտրութիւնների ժամանակ ամենից շատ տրուել են Օրմանեան արքեպիսկոպոսի և Կարապետ եպիսկոպոսի անունները, ապա Մեսրոպ եպիսկոպոսի անունը։ Թիւրքիայի հայերի մէջ, ըստ երևոյթին, տրամադիր են այս անգամ կաթողիկոս ընտրել ռուսահայ եկեղեցականների միջից, և այնտեղ, շատերի կարծիքով, յարմար ընտրելի է նկատվում Սուրէնեան արքեպիսկոպոսը։ Հետևաբար՝ վաղօրօք կարելի է ասել, որ կաթողիկոսական ընտրելիների քառանուն ցանկը կը կազմուի այս կերպով—Օրմանեան, Սուրէնեան, Կարապետ և Մեսրոպ. կամ՝ Օրմանեան, Սուրէնեան, Կարապետ և Բագրատ, եթէ վարդապետների միջից ևս ընտրելու սկզբունքը յաղթանակէ։ Բայց քառանուն ցանկից ո՞ր երկուսը կընտրուեն կանդիդատներ, առաջարկելի՝ ի հաստատութիւն Թագաւոր Կայսրի, այդ դժուար է գուշակել, որովհետև կախուած է շատ պատահական հանգամանքներից, մանաւանդ որ քուէարկութիւնը գաղտնի է լինելու։

Մի խօսքով՝ ներկայումս չկայ մի այնպիսի եկեղեցական, որին կարելի լինէր խղճի մտօք և ամենայն անկեղծութեամբ յանձնարարել իբրև արժանաւորագոյն յաջորդ Գրիգոր Լուսաւորչի գահի։ Կարելի է ի նկատի ունենալ միայն համեմատական արժանաւորութիւնները և ըստ այնմ, իբրև կոմպրոմիս, յանձնարարել մէկին։

***

Մայիսի 22-ին կատարուեց հայ գրող-վիպասան Շիրվանզադէի յոբելեանը։ Մեր նախորդ տեսութեան մէջ մենք շնորհաւորեցինք այդ յոբելեանը։ Այսօր կամենում ենք կանգ առնել մի բնորոշ երևոյթի վրայ, որ երևան եկաւ այդ յոբելեանի ժամանակ, երևոյթ, որ գալիս է մի աւելորդ անգամ ապացուցանելու մեր այն թէզիսը, թէ մեր ժամանակակից գրողների մէջ խօսքը և գործը բնաւ իրար հետ զուգընթաց չեն ընթանում։

Ինչպէս յայտնի է, Շիրվանզադէի երեսնամեայ գրական գործունէութեան յոբելեանը տօնելու համար կազմուած մասնաժողովի պատուաւոր նախագահ ընտրուած էր Ալ. Մանթաշեան, իսկ իրական նախագահ՝ բազուեցի գործարանատէր և նաւթարդիւնաբերող Հ. Մելիքեան։ Երկուսն էլ դրամատէր, բուրժուազիայի խոշոր ներկայացուցիչներ և գրականութեան հետ ոչ մի կապ չունեցող անձինք։ Եւ մինչ Ալ. Մանթաշեան—որին, ի դէպ է ասել, ընտրել էին պատուաւոր նախագահ իր ցանկութեան հակառակ—դեռ այն առաւելութիւնը և որոշ իրաւունքն ունէր, որ յայտնի էր ոչ միայն իբրև կապիտալիստ, այլ և իբրև մեկենաս, բարեգործ և նրա նախագահութիւնը լոկ անուանական էր, սակայն Հ. Մելիքեանը, որ իրական նախագահ էր, բացի կապիտալիստ լինելուց ուրիշ ոչ մի յատկութիւն չունէր, ոչ մի արժանիք, որով փայլում լինէր մինչև այսօր և որը բարոյական իրաւունք տար նրան կանգնել մի զուտ գրական տօնախմբութեան գլուխ. դեռ չենք խօսում, որ նա նոյն իսկ չէ պատկանում ինտելիգենցիային, լինելով կիսակիրթ անձն և բոլորովին անծանօթ հայ ազգին։ Շիրվանզադէի յոբելեանին համազգային բնաւորութիւն տալու նկատողները մոռացել էին, որ այդ դէպքում՝ պէտք էր նախագահ ընտրել մի անձն, որ գոնէ փոքր ի շատէ յայտնի լինէր ազգի ընդհանրութեան, ինչպէս Մանթաշեանը։ Բայց այդ պարոնները մոռացել էին ոչ միայն գրականութեան բարոյական շահերը, այլ և այդ հանգամանքը, դրդուած, ինչպէս քիչ յետոյ կը տեսնենք, նեղ, գծուծ շահասիրութիւնից։ Եւ ստացուել էր այն անբնական, ուրեմն և հրէշաւոր երևոյթը, որ մի զուտ գրական տօնախմբութեան գործի ղեկավար, գլուխ և ներկայացուցիչ հանդիսանում էր մի կիսակիրթ կապիտալիստ, մի անձն, որ գրականութեան և գեղարուեստի հետ ոչ մի օրգանական կապ չունի։

Այդ անբնական երևոյթը, ի հարկէ, չէր կարող չգրաւել գրական մաքուր բարքերի և գրականութեան բարոյական շահերին նախանձախնդիր անձանց և գրողների ուշադրութիւնը և

առաջ չբերել բողոք։ Եւ այդ բողոքը լսուեց Մոսկվայից մի խումբ գրողների—Ալ. Ծատուրեանի, Կ. Կուսիկեանի և այլոց—կողմից, հեռագրով, որ ուղղուած էր «Մշակ», «Սուրհանդակ» և «Հորիզոն» թերթերին։ Եւ ահա այդ մի փոքրիկ, բայց ըստ բովանդակութեան խոշոր հեռագիրը ցոյց տուեց, թէ այն թերթը, որ սիրում է իրան անուանել «հայ գրողների օրգան», որ սիրում է պարծենալ, թէ պաշտպանում է գրողների շահերը, որ իրանից դուրս գրական աշխարհ չէ տեսնում, թէ այն գրողները, որոնք կազմում են «Հորիզոնի» սիւները, որքա՜ն ողորմելի, խղճուկ և որքա՜ն ցինիկ գաղափար ունեն հայ գրականութեան և գրողների մաքրութեան ու շահերի մասին և որքա՜ն ստրուկ երկրպագուներ են կապիտալի, մամոնայի՝ մինչ այն աստիճան, որ մի առանձին պարծանքով թոյլ են տալիս իրանց օրգանի էջերում մի յղփացած կապիտալիստի, մի parvenu-ի, որ օրգանական և նոյն իսկ բարոյական ոչ մի կապ չունի հայ գրականութեան հետ, ցինիկ կերպով ի ցոյց դնել իր գոյնը, ստորագրելով en toutes lettres իր «գործարանատէր և նաւթարդիւնաբերող» կոչումը և հեգնօրէն բարեկրթութեան դասեր տալով բողոքող գրողներին, որոնց մի երկուսը (Ա. Ծատուրեան, Տէրեանց) հէնց այդ լրագրի աշխատակիցներն են։ Կրկնում ենք, որ «Հորիզոնը» մի առանձին ցինիկութեամբ հրատարակեց Հ. Մելիքեանի այդ մարգարիտ գրուածքը (խմբագրուած, անշուշտ, «Հորիզոնի» խմբագրութեան մէջ), որովհետև նա առաջ տպեց Մելիքեանի այդ գրուածքը և ապա միայն բողոք-հեռագիրը, մինչ պէտք է հակառակը լինէր, և մինչև այսօր խոհեմաբար չբացատրեց բողոքողների համար այդ տարօրինակ և անհասկանալի, իսկ մեզ համար շատ հասկանալի վարմունքի պատճառը։ Եւ «Հորիզոնը» չբաւականացաւ նոյն իսկ դրանով, այլ իր քառասուն չակերտաւոր անմահ գրողներից մէկի բերանով (Վալադեանի) աշխատեց մի շարք յօդուածներով օգնութեան հասնել Հ. Մելիքեանին և ցոյց տալ, որ բողոքողները սխալվում են։ Եւ որ ամենից զզուելին էր, «հորիզոնականները» ընդունեցին Հ. Մելիքեանի այն վերին աստիճանի միամիտ բացատրութիւնը, որով նա, «խօսքը կտուրը գցելու համար», աշխատում էր ապացուցանել, թէ բողոքողները առհասարակ այն կարծիքի են, թէ կապիտալիստները չպէտք է մասնակցեն գրական մարդկանց յօբելեաններին, որպէսզի՝ դնելով իրանց հակառակորդների բերանում այդպիսի մի անհեթեթ խօսք՝ առարկեն նրանց և ցոյց տան նրանց սխալը։ Մինչ անաչառ ընթերցողի համար շատ պարզ էր, որ բողոքողները ամենևին այդ միտքը

չեն արտայայտում, այլ այն, թէ մի զուտ գրական տօնախմբութեան ղեկավար և գլուխ չպէտք է լինեն այնպիսի անձինք, որոնք գրականութեան հետ օրգանական ոչ մի կապ չունեն։ Տարբերութիւնը ահագին է։

Եթէ այս երևոյթի վրայ մենք երկար կանգ ենք առնում, այդ նրա համար է, որ մեր գրական և հասարակական բարքերի տեսակէտից նա մի ցայտուն վկայական է «Հօրիզօնի» պէտթերթի և նրա շուրջը խմբուած ու իրանց «միակ գրող» համարող անձանց համար, փառաւոր վկայաբանութիւն այն մասին, թէ որքան անհամապատասխան է նրանց գործը և կեանքի մէջ ունեցած վարմունքը, կենցաղը։ Գրչով նրանք ցոյց են տալիս իրանց բարեկամ, կարեկից՝ աշխատաւոր դասի, նախանձախնդիր՝ գրական մաքուր բարքերի, բայց գործով, կեանքի մէջ նրանք երկրպագում են մամոնային, կապիտալին և խունկ են ծխում յղփացած բուրժուայի առաջ, որովհետև նրանից ակնկալութիւններ ունեն, որովհետև կեղծ են իրանց արտայայտած բոլոր արմատական մտքերը, այլ դրանք միայն անհոգի, անկենդան ֆրազներ են՝ միամիտներին խաբելու։ Եւ զարմանալի է, որ փորձը, իրականութիւնը չեն կարողացել համոզել Ա. Ծատուրեանին, Կ. Կուսիկեանին և ընկերներին, թէ սպասել այլ վերաբերմունք Յովհ. Թումանեանից, Լէօից և Շիրվանզադէից և առ հասարակ «հօրիզօնականներից»՝ միամտութիւն կը լինէր։ Այդ պարոնների համար մի Մէլիքեան, մի այլ կապիտալիստ աւելի հմայիչ նշանակութիւն ունի, քան գրականութիւնը, գրական մաքրութիւնը և իդէալականութիւնը։ Եւ կապիտալիստ, յղփացած ու կիսակիրթ բուրժուա Հ. Մէլիքեանի պէս անձն այնքան թանկագին է այդ պարոնների համար, որ նրանք չեն քաշուի, ինչպէս և չքաշուեցին, թոյլ տալ նրան պախարակել հէնց իրա «Հօրիզօնի» աշխատակիցներին և նրանց բարեկրթութեան դասեր տալ։

***

Մեռաւ և ծերունի հայ գրող և ուսուցիչ Ղազարոս Աղայեանը։ Եւ նրա մահը անկեղծ վիշտ ու ցաւ առաջ բերեց ոչ միայն իր մտերիմների, իր համախոհների, այլ նոյն իսկ իր գաղափարական հակառակորդների մէջ։ Մեր ցաւոտ հայ իրականութիւնը այնքան ապականուել է, որ Ղազարոս Աղայեանը, որն իբրև դիւցազներգու բանաստեղծ, իբրև մանկական գրող և հայ գրական աշուղ չպէտք է ընաւ գաղափարական

հակառակորդներ ունենար, ստեղծել էր սակայն հակառակորդների մի ամբողջ խումբ իր դէմ այն օրից, երբ ինքը՝ թողնելով իր բուն կոչումը, թողնելով իր «Տորք Անգեղը», «Արեգնազանը» և «Մանիր, մանիր, իմ ճախարակը»՝ ընկել էր մի ապականուած մթնոլորտ, իջել էր բանաստեղծական բարձրութիւնից մինչև թայֆայական, նեղ կուսակցական հորիզոնը և իրաւամբ առաջ բերել դժգոհութիւն ու ափսոսանք նրանց շրջանում, որոնք նախանձախնդիր են մայրենի գրականութեան զարգացման և բարգաւաճման։ Եւ բոլոր անաչառ ու անկողմնակալ մարդիկ կը խոստովանեն, որ Ղազարոս Աղայեանը ինչ որ ստեղծել է, ինչ որ արտադրել է և ինչ որ նրա համար գրական համբաւ է ստեղծել, եղել է մինչև այն օրը, երբ նա զուտ գրական գործչի, բանաստեղծի և ուսուցչի դերումն էր, բայց երբ նա կամեցաւ դառնալ և հրապարակախօս, երբ նա վերջին տարիներս, յարելով «Հորիզոն» թերթի մարդկանց, սկսեց «խելքին զոռ տալ», ինչպէս ասում են, նա ընկաւ, և նրա համբաւը, իբրև գրողի, նսեմացաւ։ «Ղազարոս Աղայեանը այժմ չմեռաւ, — ասաց նրա ամենամտերիմ աշակերտներից և բարեկամներից մինը «Աղբիւր-Տարազի» խմբագրութեան երեկոյթին մի խմբի առաջ,—նա չորս տարի է, ինչ մեռել է հայ հասարակութեան համար, այն օրից՝ երբ նա մտաւ «Հորիզոնի» խմբագրական կազմի մէջ և, թողնելով իր քնարը, իր մաքուր գրիչը, ընկղմուեց թայֆայական հոսանքի մէջ»։

Եւ սա շատ ճիշտ է։ Ամենքը կը վկայեն, որ Ղազարոս Աղայեանը ինչ որ գրեց այս վերջին տարիները իբրև հրապարակախօս, իբրև աշխատակից «Հորիզոնի»՝ այդ թերթի մէջ, ոչ միայն մի հատիկ, մանանեխի չափ անգամ մի փայլ չհասցրեց նրա գրական համբաւին, այլ և սաստիկ նսեմացրեց այդ համբաւը։ Ղազարոս Աղայեանը թանկ է և գնահատելի հայ գրականութեան և հայ դպրոցի համար՝ իբրև դիւցազներգու-բանաստեղծ, իբրև «Տորք Անգեղի», «Անահիտի», «Արեգնազանի» «Մանիր, իմ ճախարակի» և այլ բանաստեղծական գրուածքների հեղինակ, որոնք յարատև գոյութիւն կունենան, մինչ նրա ընդհանուր գրական և հրապարակախօսական յօդուածները ոչ միայն կը գլորուեն մոռացութեան անդունդը, այլ և նիւթ կը ծառայեն ապագայ քննադատի և պատմաբանի համար՝ ցոյց տալու, թէ մարդիկ, յաճախ, ինչպէս են մոռանում իրանց իսկական քանքարը, իրանց տաղանդը, իրանց ճշմարիտ կոչումը և հետամուտ լինում այնպիսի հորիզոնների, ուր նրանք, վիթխարիներ, հանդիսանում են լոկ գաճաճներ։

Հետևաբար և միանգամայն անտեղի ու ծիծաղելի էր, երբ «Հօրիզօնը» իր պատուական աշխատակցի մահը աշխատեց շահագործել՝ իր ֆօնդը բարձրացնելու համար, որպէս Թէ հայ հասարակութեան և ինտելիգենցիայի մատուցած յարգանքը՝ Ղազարոս Աղայեանի ստեղծագործութեան՝ անվում էր իբրև «Հօրիզօնի» աշխատակցի։ Ընդհակառակը, բոլոր ցաւակցական հեռագիրները, որոնք ստացուեցին զանազան վայրերից, մամուլի այլ օրգանների մէջ երևցած բոլոր յօդուածները մի գըլուխ շեշտում էին Ղ. Աղայեանի գործունէութիւնը իբրև բանաստեղծի, գրական աշուղի, ուսուցչի—իսկ այդ գործունէութիւնը կատարուել է շատ և շատ առաջ—և միայն մի քանի հեռագիրներ, ի Թիւս այլոց, ցաւակցութիւն էին յայտնում և «Հօրիզօնի» խմբագրութեան։

Իսկ Թէ իրանց ազատոր յայտարարող «հօրիզօնականները» որքան անկեղծօրէն յարգում էին Ղ. Աղայեանի յիշատակը, դրա պերճախօս ապացոյցն այն փաստն է, որ նրանք բնաւ չխղճահարուեցին Թաղումից յետոյ անմիջապէս մասնակցել Օրթաճալայում կազմակերպուած և սկանդալով վերջացած քէֆ-քելեխին*) և նոյն օրը երեկոյեան մասնակցել կլուբի Թղթախաղին...։

Փարիսեցիները միշտ մնում են փարիսեցիներ...։

---

II

## ԹՈՒՐՔԱՀԱՅ ԿԵԱՆՔ

Պատրիարքի ընտրութեան հարցը դեռ չլուծուեց։ Մանկունի արքեպիսկոպոսը շարունակում է իր տեղապահութիւնը

*) Ղ. Աղայեանի Թաղումից յետոյ մի խումբ յուղարկաւորներ—որոնց մէջ և «ազատոր» Լէօն, Շիրվանզադէն—գնում են Օրթաճալայի այգիներից մէկը և այդտեղ մի տարօրինակ հոգեհաց սարքում, զուռնայով և քամանչայով։ Գինին ազդում է, և «Հօրիզօնի» սիւներից մինը՝ Շիրվանզադէն՝ հայհոյանքներ է Թափում հայ յեղափոխականների գլխին, և վէճը վերջանում է ռմփոցով ու ներկաներից մի երկուսի խիստ անպատուաբեր խօսքերով ուղղուած Լէօի և Շիրվանզադէի հասցէին։ Ահա՛ ինչպէս «ազատոր» «հօրիզօնականները» յարգեցին իրանց պետի Թարմ յիշատակը հէնց նոյն օրը, երբ Ա. Ահարոնեանը լալիս էր, Թէ «ինչո՞ւ անտէր Թողիր մեզ և գնացիր»։

և, ըստ երևոյթին, հող է պատրաստում պատրիարք ընտրուելու, հետևելով համակերպման շաւղին ազգային ժողովի մէջ տիրող կուսակցութիւնների վերաբերմամբ, «երկուքն ալ շահի՞նք» սկզբունքը գործադրելով։

Գէորգ IV կաթողիկոսի այդ գործակիցը, որ Էջմիածնում գտնուած ժամանակ անհաշտելի և անզիջելի քաղաքականութեան էր հետևում, այսօր, խրատուած՝ անցեալի փորձառութիւնից և ընկճուած՝ ծերութեան հասակից, համակերպման և զիջումների քաղաքականութիւնն է գործադրում, և այդ շաւիղն այնքան աջող և նպատակայարմար է գտնում, որ նոր ծագած փառասիրական ձգտումը, պատրիարք ընտրուելու, նոր թուիչք ստանալով, երազում է նոյն իսկ կաթողիկոսական գահը բազմելու փառասիրութեան յագուրդ տալ։ Բարեբախտաբար թէ դժբախտաբար՝ Մանկունու թեկնածութիւնը կաթողիկոսական գահին ապարդիւն պէտք է համարել, որովհետև ռուսահայերի մէջ դժուար թէ գտնուի մի հատ պատգամաւոր, եկեղեցական կամ աշխարհական, որ ձայն տայ Մանկունու թեկնածութեան։

Եւ թիւրքահայերը լաւ կանեն, եթէ չարժանացնեն ռուսահայերին այդ մեծ պատուին ու պատրիարքական գահի վրայ փորձեն Մանկունի սրբազանի փորձառութիւնը և հմտութիւնը։

***

Ազգային երեսփոխ. ժողովը վերանորոգուելով իր կազմի կողմից՝ յուսահատութեան մատնեց այն խմբակցութիւնը, որ յաւակնութիւն ունի յորջորջել իրան «ազատական» անունով։ Մենք ասում ենք «յաւակնութիւն ունի», որովհետև մենք չենք կարող «ազատական» համարել մի այնպիսի խմբակցութիւն, որի կազմի մէջ են գտնվում այնպիսի անհատներ, ինչպէս Վռամեան և Զարդարեան, այդ վատահամբաւ կուսակցականները, որոնց ներկայութիւնը ազգային ժողովում նոյն իսկ վարկաբեկ է անում ժողովի համբաւն և պատիւը։ Սակայն եթէ նոյն իսկ պակասեն ազգային ժողովից Վռամեան և Զարդարեան երեսփոխանների պէս վատահամբաւեալները, դժուար թէ ազգային ժողովը կարողանայ որևէ էական օգնութիւն մատուցանել թշուառ Հայաստանի տարաբախտ ժողովրդին, որովհետև նոր ընտրուած վարչութիւնը՝ իր վարչապետ Սթամպօլցեանի հետ, ինչպէս երևի, Մանկունի արքեպիսկոպոսի պէս հետևելու է զիջման, կոմպրօմիսների քաղաքականութեան, սի-

րաշահելու քաղաքականութեան։ Նա, այդ նոր վարչութիւնը, չէ ունենալու հաստատակամ, անշեղ և անթեք, անընկճելի ու տևական ուղղութիւն. և եթէ ճիշտ է հեռագրական գործակալութեան հաղորդած լուրը, թէ հայոց նոր վարչապետ Սթամպօլլուեանը նշանակուել է օսմանեան թղթատարութեան և հեռագիրների մինիստր, ապա պէտք է ենթադրել, որ թիւրքահայոց նոր վարչութիւնը գործի գլուխ չանցած ջլատուեց արդէն և այժմ պէտք է հետամուտ լինել ընտրելու նոր վարչապետ։

*
* *

Ներկայ րօպէին թէ տեղապահ Մանկունի սրբազանի, թէ ազգային երեսփ. ժողովի «ազատական» և «կենտրոնի» ֆրակցիաների վրայ ծանրանում է մի հատիկ հրամայողական պահանջ՝ միաբանելու, դէն ձգելու կուսակցական շարժառիթները, երկպառակութիւնը, միաբանելու ի մի սիրտ և ի մի հոգի և զբաղուելու միայն և եթ թշուառ Հայաստանի խնդրով, Հայաստանի, որի գլխին դամօկլեան սրի պէս նորից կախուած է կոտորածների, ջարդերի արհաւիրքը։ Բռնակալ Աբդիւլ-Համիդի օրով քիւրդերին գաղտնի կազմակերպում էին հայերին ջարդելու համար. այսօր, սահմանադրական րէժիմի օրով, քիւրդերը հրապարակօրէն լիգա են կազմում հայերի ջարդը կազմակերպելու, և այս լուրը հաղորդում է հեռագրական գործակալութիւնը ամբողջ աշխարհին։ Կրկնվում է ստէօրօտիպ կերպով այն ամենը, ինչ որ կատարվում էր Աբդիւլ-Համիդի օրով. գաւառներում սպանում, մորթոտում են հայերին, թալանում հայ գիւղերը. հայերը բողոքում, արդարութիւն, ոճրագործների պատիժն են պահանջում. թէ տեղական իշխանութիւնները, թէ մեծ վեզիրը, ներքին գործերի մինիստրը հաւաստիացնում են, որ յանցաւորները կը պատժուեն, արդարութիւնը գործ կը դրուի խստիւ յանցաւորների դէմ. և բանը վերջանում է նրանով, որ ոչ մի ոճրագործ չէ պատժվում, նոյն իսկ չէ բանտարկվում, այլ Բ. Դուռը հեռագիրներ է ստանում, ստորագրուած՝ հայերից, ինչպէս Աբդիւլ-Համիդի ժամանակ, թէ շնորհիւ սահմանադրական իշխանութեան գաւառներում լիուլի անդորրութիւն է և ոչ մի հարստահարութիւն չկայ։ Վերջ ի վերջոյ դուրս է գալիս, որ հայերն իրանք են իրանց սպանել, կողոպտել և քիւրդերը, ոճրագործները գառան նման անմեղ են։

Եւ հայոց ազգային երեսփոխանական ժողովը փոխանակ բարձր ի գլուխ պոռալու, փոխանակ երևան հանելու այդ ճըշ-

մարտութիւնը՝ զբաղուած է Գէորգ Երէցեան արքեպիսկոպոսի գործով, որ ըստ էութեան երկու գրոշ չարժէ. կարծէք թէ ամբողջ հայ ազգի բախտը, ապագան կախուած լինի Գէորգ Երէցեանի երեսփոխան լինելու կամ չլինելու հարցից։ Իսկ դաշնակցականները, հայ ազգի պատենտաւոր փրկիչները, փոխանակ զգալու իրանց կատարած դաւաճանական գործը—դաշն կապելով երիտ.-Թիւրքերի հետ, նրանք հանդիսանում են մի տեսակ մեղսակիցներ, որովհետև իրանց կուսակցական շահերի համար աչք են գոցում երիտ.-Թիւրքերի կառավարութեան վարմունքի վրայ և հանդէս չեն գալիս իբրև բողոքողներ—մեծ ապլոմբով յարձակվում են Ռուսաստանի վրայ, գոռում գոչիւն բարձրացնում, թէ ռուսական կառավարութիւնը ընդհանուր հալածանք է յարուցել ռուսահայերի դէմ, բռնութիւններ է գործում, իբրև փաստ բերելով այն հանգամանքը, որ ռուսաց կառավարութիւնը բանտարկել, դատի է ենթարկել մի քանի տասնեակ դաշնակցականների. որպէս թէ մի քանի տասնեակ կամ նոյն իսկ մի քանի հարիւր դաշնակցականներին դատի ենթարկելը, բանտարկելը հալածանք է ամբողջ հայութեան դէմ։ Եւ այդ կեղծաւոր փարիսեցի և մաքսաւոր «Ազատամարտը»—որ փչում է այդպիսի անհեթեթութիւններ, որ փոխանակ իր տան մէջ, իր աչքում ցցուած գերանը տեսնելու՝ ուրիշի աչքի շիւղն է նկատում—անգիտանալ է ձևացնում Հայաստանում կատարուող գազանութիւնները, որովհետև ինքը մի ժամանակ Պարիզում դաշն է կապել երիտասարդ Թիւրքերի հետ, որովհետև յարձակուել օսմանեան կառավարութեան վրայ շատ էլ հեշտ չէ, քանի որ սեպհական կաշու խնդիր կայ մէջտեղ. բայց յարձակուել կարելի է Ռուսաստանի վրայ, որովհետև նախ այդ Ռուսաստանը հալածում է իր համախոհ դաշնակցականներին, երկրորդ՝ դրանով կարելի է օսմանցիների աչքում «օսմանեան հայրենասէրի» տիտղոս ձեռք բերել։ Բայց մի՞թէ հարկ կայ կրկնելու, որ նախ՝ Ռուսաստանում ոչ մի հալածանք չկայ ընդհանուր հայութեան դէմ, այլ հայերը նոյնքան ենթակայ են տիրող ռէակցիոնական ուղղութեան հետևանքներին, որքան և բուն ռուսները և բոլոր միւս բազմաթիւ ազգերը. երկրորդ՝ սար ու ձոր տարբերութիւն կայ, թէ ըստ էութեան և թէ ըստ ձևի, այն հալածանքի միջև, որին ենթակայ են ներկայումս հայերը Թիւրքիայում և դաշնակցականները Ռուսաստանում։ Թիւրքիայում հայերին մորթոտում են ճանապարհին, թալանում, կողոպտում, և ոճրագործ Թիւրքերը կամ քիւրդերը ոչ մի պատժի չեն ենթարկվում։ Թիւրքիայում հայերին չեն վերադարձնում,

հակառակ Նոր րէժիմի հանդիսաւոր խոստումներին, այն հողերը, որոնք դարերով նրանց սեպհականութիւնն են կազմել։ Իսկ Ռուսաստանում դատաստանի են ենթարկել մի քանի տասնեակ, թէկուզ երկու-հարիւր անձանց, որոնք մեղադրվում են, պետական օրէնքների համաձայն, զանազան ոճրագործութիւնների մէջ։ Ճիշտ է, ամբաստանեալների մէջ կան և այնպիսիները, որոնք անմեղ են, որոնց դէմ լոկ պատահական փաստեր կան, բայց չէ՞ որ բոլոր ամբաստանեալներին պաշտպանուելու, արդարանալու միջոց և հնարաւորութիւն է տրուած։ Եւ մի՞թէ կարելի է ասել, թէ դատի ենթարկելով դաշնակցականներին՝ դըրանով հալածվում է ամբողջ հայ ժողովուրդը. Ի՞նչ կապ կայ դաշնակցականն'րի և ամբողջ հայ ժողովրդի միջև, որ ընաւ չէ համակրել նրանց վնասակար և ազգակործան գործունէութեան։

«Ազատամարտը» հազար անգամ աւելի օգուտ տուած կը լինէր, եթէ զբաղուէր Թիւրքաց Հայաստանում կատարուող ոճրագործութիւնների խնդրով. պաշտպանէր քիւրդերի վայրագութեանը մատնուած թշուառ հայերի դատը, քան անպատ յարձակումներով յոխորտար Ռուսաստանի դէմ։

---

III

## ՊԱՐՍԿԱՀԱՅ ԿԵԱՆՔ

Ոչ նուազ աղէտալի է պարսկահայոց կեանքը։ Հայ ժողովրդի վիճակը աւելի աղէտալի է այսօր, քան Մամադ-Ալի շահի ժամանակ, որովհետև այսօր թէև Պարսկաստանը հռչակուած է սահմանադրական երկիր, ունի պարլամենտ, բայց նրա մէջ բացակայում է որևէ կարգ, օրէնք, և, երկիրը մատնուած լինելով կատարեալ անարխիայի, չունենալով ղեկավարող ձեռք և ոյժ, բնականաբար, ամեն մի անկիւնում առաջ է եկել մի փոքր բռնապետ, և Պարսկաստանի կառավարութիւնը բաղկացած է այսօր փոքրիկ բռնապետներից, որոնք ամենից առաջ իրանց ընչաքաղցութեան և կողոպուտի աւազակային ծարաւը յագեցնում են այն տարրերի հարստահարութեամբ, որոնց վրայ առաջ ևս սովոր էին նայել իբրև կթան կովերի վրայ։ Ղարադաղում պատահած վերջին դէպքերը գալիս են ապացուցանելու, որ եթէ եւրոպական պետութիւնների—գլխաւորապէս Ռու-

*ստանի և Անգլիայի—կողմից կտրուկ միջոցներ ձեռք չառնուեն, հայերի ապրուստը Ատրպատականի նահանգում միանգամայն անհնարին կը դառնայ։ Ճիշտ է, մենք չենք կարող չը զգալ մեր զայրոյթը, որ Ղարադաղի Թալանող խաների ձեռքը զէնք և պատրուակ են տուել «մեր ազգային փրկիչները», քարոզելով և մոլորեցնելով խեղճ և միամիտ հայ գիւղացիներին՝ չվճարել կալուածական տուրքեր, և դրանով գրգռել են խաների զայրոյթը և մատնել ժողովրդին նրանց վայրագ կրքերի բռնկման, բայց դարձեալ պարզ է, որ խաները խրախուսանք են ստանում գլխաւորապէս երկրի անիշխանական դրութիւնից։*

*Արդեօք պարսկական մէջլիսը կը կարողանայ որևէ դեղ և դարման անել. կասկածում ենք, քանի որ մէջլիսն ինքը ամեն րոպէ կարող է ենթարկուել բռնապետների հարուածներին։*

*Մութ և մռայլ է Պարսկաստանի ապագան, նրա հետ՝ և այդ երկրի հայերի ապագան։*

ՇԱՒԱՐՇ

# ՀԱՅ ԵԿԵՂԵՑՈՒ ԲԱՐԵՓՈԽՈՒԹԵԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋԸ

## I

*Ներկայումս հայ ժողովուրդը, շատ քիչ բացառութեամբ, խօսում է իր եկեղեցու բարեփոխութեան մասին, մի հարցի՝ որ բոլորովին հասունացած է և կարօտ իր իրաւացի լուծման։*

*Մենք, որպէս կողմնակի դիտող ներկայումս կաթողիկոսական ընտրութեան պայքարին և ցանկացող՝ եկեղեցու բարեփոխման և նրա ամենալայն ժողովրդականացման, աւելորդ չենք համարում սոյն մի քանի խորհրդածութիւններով դուրս գալ այդ առթիւ մամուլի մէջ։*

*Որովհետև կաթողիկոսի համոզմունքը և հայեացքները շատ կարևոր դեր կարող են խաղալ ժողովրդական արդար պահանջի վերաբերմամբ՝* անյապաղ *ձեռնարկելու եկեղեցու բարեփոխութեան գործին, համաձայն ժամանակի և հայ կեանքի ներկայ պայմանների, հէնց այդ տեսակէտից եկեղեցու բարեփոխութեան և կաթողիկոսական ընտրութեան հարցերը մենք իրար հետ մասամբ կապուած ենք գտնում։*

*Այժմեան ընտրութեան այդ պայքարի մէջ՝ մենք կարծում ենք, որ եթէ նոյն իսկ աջողուի գտնել թէկուզ աշխարհականներից ամենաարժանաւորագոյնին, որին ամբողջ ժողովուրդը ովսաննաներով առաջնորդէր դէպի Էջմիածին, բայց և այնպէս մենք յետագայում կը տեսնենք, որ այդ ամենաարժանաւորագոյն, բիւրեղանման, անբիծ, անարատ, թէկուզ յայտնի վարչական մարդը նորից դժգոհութեան խծբծանքին պիտի արժանանայ և ամեն կողմից «ախ»-եր և փոշմանութեան ափսոսանքներ պիտի լսուեն այդ ընտրուածի դէմ, թէ «մենք այս անգամ էլ սխալուեցինք»։*

*Սրա գաղտնիքը միմիայն մեր եկեղեցու հիւանդ կողմերի մէջ պէտք է որոնել։*

Այս հիւանդ կողմերի վէրքը հին է, դարձել է քրօնիկական, վարակիչ և միևնոյն ժամանակ կարօտ՝ անյետաձգելի բուժման, և մինչ այդ՝ դժուար թէ կարելի լինի յուսալ երբևիցէ եկեղեցական գործերի կարգաւորութեան մասին։

Հոգևոր կոչման մէջ մտնողներից շատ քչերը զերծ մնացին բարոյապէս վարակուելուց (թող ների ինձ այսպէս ասել), և մենք մեծ զարմանքով տեսնում ենք երէկուայ «ֆրակը» հագին ինտելիգենտ, առաջադէմ, լուսամիտ և լաւ յոյսերով անհատին հոգևոր կոչման մէջ մտնելուց և հոգևորականի զգեստ հագնելուց յետոյ դարձած յետադէմ, շահասէր, ձրիակերութեան գերի և նոյն իսկ վաշխառու*)։

Որովհետև թունաւորուած է, կասեմ ես, այն մթնոլորտը, որի մէջ գտնվում են մեր հոգևորականները, ժողովրդի հոգևոր դաստիարակները։ Եւ այդ թունաւորուած մթնոլորտը կազմում է մեր եկեղեցու հիւանդ կողմը։

Սոյն հոգևոր դաստիարակիչների նախորդները իրանց տըհաս անհեռատեսութիւնից և, որ գլխաւորն է, շահասիրութիւնից Լուսաւորչի մօտ 1700 տարի առաջ հիմնած անպաճոյճ, պարզ, անարատ եկեղեցու մէջ մտցրին ժողովրդին խորթ և անմարսելի ծէսեր, ստոր սովորութիւններ, ձևեր, զարդեր, պատկերներ, սրբեր, կարգ ու կանոններ և նոյն իսկ աղօթքներ և այդպիսով վարակեցին նրա մաքուր օդը, քաօս ստեղծեցին այնտեղ, օդանցքները փակեցին, լուսանցքները ծածկեցին սև վարագոյրներով և իրանք սկսեցին խաւարի մէջ իշխել և իրանց սկզբունքով ու հասկացողութեամբ դաստիարակել այդ վայրը այցելող ժողովրդին։

Լուսաւորչի և մի քանի իր յաջորդների լայն հայեացքներով հիմնուած և՝ այսպէս ասած՝ վերոյիշեալ հանգամանքներից չազդուած, չկաշկանդուած այն ժամանակուայ եկեղեցի-դպրոցն էր, որ տուեց ժողովրդին ոսկեդար և մատենագիրներ։ Եւ եթէ յետագայի բոլորուող այնքան երկար դարերը տուեցին նրան միմիայն մի քանի ոչ՝ բառի բուն իմաստով կղերական, բայց քիչ ի շատէ աչքի ընկնող առաջադէմ հոգևորականներ, այդ պէտք է վերագրել սրանց բնական յատկութիւններին, քիչ ի շատէ այդ մթնոլորտից զերծ մնալուն կամ ուրիշ հանգամանքների, որ կը լուսաբանեն նրանց իսկական կենսագրութիւնները։

*) Տգէտների մասին աւելի լաւ է լռել։

Ահա թէ ինչպէս պահեցին Լուսաւորչի միւս՝ բայց անհեռատես յաջորդները նրա վեհ աւանդը և ինչպիսի ժառանգութիւն թողեցին ժողովրդին։

Մեծ Պարթևի այդ եկեղեցի-դպրոցի մէջ, ուր դարեր առաջ ժողովրդին քարոզում էին Մեծ Մարդասէրի վեհ գաղափարները, իդէալները, նրա սիրոյ և խաղաղութեան պատգամները, այսօր կարդում են Յովհաննու տեսիլները և սրբերի կենսագրութիւնները «Յայսմաւուրքի» մէջ ամփոփած, որի առասպելական նկարագրութիւնները կտրում են ժողովրդի սէրը դէպի այս աշխարհը, դէպի մարդկութիւնը և մարդկային կեանքը, միանգամայն հիասթափեցնում նրան, բթացնում և տանում հեռու, մի այլ երևակայական աշխարհ...

Այսօր այդ եկեղեցու պատերը զարդարել են սրբերի երևակայական պատկերներով և լցրել եկեղեցին սրբերով և սրանց գովաբանող երգ խնդրուածքներով։

Այսօր այդ եկեղեցու մէջ հիմնել են դարակ-դրամարկղներ, որոնց մօտ կանգնած է վաշխառուն, երէցփոխը, զբաղուած առևտուրով և իր հին հաշիւները այցելուների հետ մաքրելով։

Այսօր այդ եկեղեցու մէջ հոգևոր սպասաւորները զբաղուած են պղծեալ աման, հաւ, ջուր, աղ և այլ այսպիսի բաներ օրհնելով։

Այսօր եկեղեցու այդ սպասաւորը իր ծխականներին քարշ տալով մի անկիւն խոստովանեցնելու և մեղքերին թողութիւն տալու անուան տակ՝ մահացու կերպով հարուածներ է տալիս նրանց բարոյականութեանը։ Հէնց առաջին օրից, երբ ամօթխածութեան քրտինքը երեսին մօտենում է նրան 15 տարեկան պատանի աղջիկը կամ տղան խոստովանելու, նա՝ այդ սպասաւորը՝ մի անգամից ածում է իր մօտ եկող անմեղ և աշխարհի «խէր ու շառից» անխաբար պատանու գլխին ասորի Եփրեմ վարդապետ Խուրնեցու ցեխի կողովը, «մեղան», որ տգիտութեամբ եկեղեցու հայրերը ընդունել են եկեղեցու մէջ, և նա միանգամայն բռնելով այդ ամօթաշաղախ պատանու ոտներից՝ ուղղակի անդունդն է նետում նրան...

Ինչե՞ր ասես որ նա, բերան արած, չի ասում նրա գլխին կամ ստիպում կարդալու այդ խոստովանողին։ Չկայ աշխարհիս մէջ մի բարբարոսութիւն, մի մեղք, եղեռնագործութիւն, որ այդտեղ եկեղեցու սպասաւորը չասէ, հասկացնել չտայ։ Եւ այդ շարունակվում է մինչև խոստովանողի խորին ծերութիւնը և մահը։

Ոչ ոք այդ զուլումից չի կարողանում ազատուել։ Ահա

*այսպիսի բարոյական դաստիարակութիւն են ստանում իրանց հոգևոր հօրից անհատները առանձնապէս, իսկ այդ անհատներից էլ ժողովուրդ է կազմվում։*

*Ես դեռ չեմ ասում «Հրաժարիմք ի սատանայէ» և այլ այսպիսի դարձեալ բարոյականութեան ոչ մի կաթիլ իրանց մէջ չպարունակող աղօթքների, ծէսերի, կարգերի և սովորութիւնների մասին։*

*Իսկ եկեղեցուց դուրս, Նրա շեմքի վրայ կատարվում է աւելի ևս բարբարոսական ակտ՝ կռապաշտութիւնից մնացած և հրէական հին աւանդական ծխակատարութիւնից միր եկեղեցու մէջ մտած. և այդ ակտը «մատաղի» սովորութիւնն է, անմեղ, անլեզու անասուններին մորթոտելու և նրանց արիւնը հոսեցնելու բիրտ, վայրենի սնոտիապաշտութիւնը։*

*Բոլոր այսպիսի սովորութիւնները, ծէսերը, աման-չաման օրհնելը, մեռելի կողոպուտ ստանալը և այլն ծառայում են հոգևոր սպասաւորներին որպէս եկամուտի աղբիւր, որից Նրանք ոչ թէ միայն չեն ուզում հրաժարուել, այլ աւելի եռանդով պաշտպանում, փայփայում են նրանց՝ իրանց շահերի սիրոյն, հասցնելով իրանց պահանջները վաշխառութեան աստիճանի, և նրանց փոյթ չէ, թէ ինչպիսի վնասակար ազդեցութիւն ունեն դրանք ժողովրդին բարոյապէս դաստիարակելու մէջ։*

*Հաւատացած եմ, որ եթէ Լուսաւորիչը կենդանանար, մտնէր այժմեան իր եկեղեցին, պողպատէ խարազանով Եփրեմ Խուրնեցուն և սրա նմաններին իրանց «մեղաներով», ծէսերով, սովորութիւններով և այլն այնտեղից դուրս կը նետէր, ասելով՝ «Երթ յետս իմ, սատանայ... Տուն իմ՝ տուն աղօթից կոչեսցի, և դուք արարիք զսա այրս աւազակաց...»։*

II

*Ժողովուրդը դարերով հմայուած, հիպնօզուած է եկեղեցուց և Նրան հիպնօզողը և կապողը եկեղեցու հետ եղել է մեր գրաբար՝ բոլորի համար ոչ շատ հասկանալի լեզուն... Եթէ Նրան հասկանալի լինէր այդ գրաբար լեզուն, նա պահանջներ կը դնէր եկեղեցու սպասաւորների առաջ՝ փոխանակ ամենօրեայ միանման երկար ու ձիգ «Խոնարհեցո ապրեցո»-ներով, ինչպէս նաև «Հրաժարիմք ի սատանայէ»-ով, «մեղա»-ներով և այլ այսպիսի բաներով կերակրելու՝ իսկական հոգևոր պաշար տալ Նրան, դրա համար էլ նա կընտրէր արժանաւոր և կրթուած*

մարդիկ, կապահովէր նրանց դրութիւնը և կը հրաւիրէր նրանց սպասաւորելու եկեղեցուն և ժողովրդին, միաժամանակ արտաքսելով եկեղեցուց այն «ինքնակոչ», անարժան, տգէտ հոգևորականներին, որոնք ժառանգութիւն են մնացել յաճախ իրանց անարժան հայրերից, թայֆայականութիւնից, կամ կեանքի մէջ մի որևիցէ ուրիշ գործ ճարելու կամ ընտրելու անընդունակութիւնից, անպէտքութիւնից։ Փակագծի մէջ կասենք, որ այսպիսի հոգևորականների ապիկարութեան պակասը լրացնում է ռոճկի փոխարէն սահմանուած տուրքի, ժամոցի և գանձանակի սովորութիւնը, մի տգեղ գործ, որ ուղղակի մուրացկանութեան գիրկն է նետում ամեն մի մարդու, «պինդ-երես» և նոյն իսկ վաշխառու դարձնում նրան հէնց ակամայից, որքան էլ որ դա նրա հայեացքներին հակառակ լինի։

Եւ այսպէս՝ շնորհիւ գրաբար լեզուի անհասկացողութեան և սրա շնորհիւ ժողովրդի անտարբերութեան դէպի եկեղեցին, մի տեղի, ուր վրայ նա նայել և նայում է որպէս մի վայրի՝ միմիայն իր մեղքերին թողութիւն ստանալու համար, և նաև շնորհիւ դրանց՝ եկեղեցին ապիկար հոգևորականների հսկողութեան ներքոյ գտնուելուն, ինչպէս ասացինք վերևում, ամեն ինչ այնտեղ քաօսային դրութեան մէջ է գտնվում։

Ժողովուրդն այժմ՝ բաց անելով իր քնաթաթախ աչքերը՝ աշխատում է վերջ տալ այս անբնական կարգ ու կանոններին, ցանկանում է եկեղեցին իր իսկական բարձրութեան վրայ տեսնել, գտնել նրա մէջ լսարան-կրթարան բարոյագիտութեան բարձր իդէալների և միևնոյն ժամանակ իջեան՝ հոգեկան մխիթարութիւն ստանալու համար։

Կան պահանջողներ եկեղեցին միանգամայն բաժանելու ժողովրդից, բայց առայժմս վաղաժամ կը լինէր այդ, ի նկատի ունենալով նրա տեղագրական, քաղաքական պայմանները և, որ գլխաւորն է, դեռ ևս նրա՝ ինքնաճանաչութեան և քաղաքակրթութեան իսկական մակերևոյթի վրայ չգտնուելը։

Իսկ ժամանակը և մեր ներկայ կեանքի պայմանները պահանջում են, որ այն ամենը, ինչ հին է, անպէտք, անբնական և անհամապատասխան նրանց պահանջներին, արխիվի սեփականութիւն դառնայ անյապաղ։

Մենք տեսնում ենք, որ գրագէտ մասսան դադարել է եկեղեցի գնալուց, որովհետև այնտեղ ոչ մի հոգեկան բաւականութիւն ստանալ չէ կարողանում։

Ամենօրեայ միատեսակ, երկար ու ձիգ գրաբար ժամասացութիւնը, Սաղմոսների կրկնութիւնները, օտարամուտ ծէ-

սերը, սրբերի միևնոյն գովաբանութիւնները, սրանց երևակայական պատկերների՝ գեղարուեստից զուրկ գծագրութիւնը և աւելորդութիւնը եկեղեցու մէջ, եկեղեցու տգէտ, կոշտ ու կոպիտ սպասաւորների աններդաշնակ և մի ձայնով երգեցողութիւնը և ժամարարութիւնը, եկեղեցու մէջ շարունակ ոտքի վրայ կանգնելը, նամանաւանդ ձմեռներին, երբ ստիպուած ես լինում դատարկ և ցուրտ պատերի մէջ դողդողալ և լսել տիրացուի և տէրտէրի միատեղ շարական երգելու անճոռնի գռգռոցը, և բարոյագիտական, խելօք քարոզների, խրատների միանգամայն բացակայութիւնը զզուեցրել և սառեցրել են գրագէտ մասսային եկեղեցուց։

Մենք չենք ժխտում. կան գիտակից և արժանաւոր սպասաւորներ, բայց տարաբախտաբար նրանց թիւը շատ չնչին է, և նրանք վերոյիշեալ պայմանների մէջ ոչինչ չեն կարող անել և չեն էլ ցանկանում ծառայել։ Նոյնպէս էլ չենք ժխտում, որ եկեղեցու մէջ գոյութիւն ունեն երգեցողութեան սիրուն կտորներ, բայց անհասկացող երգիչների շնորհիւ ամեն ինչ փչանում է։

Պէտք է եկեղեցու ներկայ անբնական դրութիւնը բարեփոխել, և երբ անարժանների տեղ արժանաւորները բռնեն, ապա մենք կը տեսնենք, որ ամեն ինչ, գոնէ մի որոշ չափով, բնական կարգով կընթանայ՝ համաձայն ժամանակի և մեր կեանքի պայմանների։

Նրանք, այդ գիտակից մարդիկ, պահանջում են կրկնամուսնութիւն մտնելու իրաւունք, որովհետև տիրուհու մահից յետոյ նրանց որբերի դրութիւնը անտանելի է դառնում, իսկ օջախները քար ու քանդ։

Նրանք պահանջում են ռոճիկ և կենսաթոշակ, իրաւացի կերպով նկատելով որ քահանայի մահից յետոյ մնում են անապրուստ շատ անգամ մանր «խմորակեր» որբեր, որոնք ստիպուած պիտի լինեն ուղղակի մուրացկանութեամբ պարապել։

Կայ և մի ուրիշ հարց, որ գուցէ մեր նկատողութիւնից մինչև օրս վրիպել է. այդ հարցը սպասաւորի ֆիզիքական հարցն է։

Եկեղեցու սպասաւորը պարտաւոր է մեծ պասի ընթացքում օրական երեք, իսկ միւս օրերում օրական երկու անգամ ժամասացութիւն կատարել՝ առաւօտեան շատ վաղ և երեկոյեան։ Եկեղեցում նոյն իսկ ոչ ոք չի լինում, նամանաւանդ ձմեռներին, բայց նա պարտաւոր է իր երկար ժամասացութիւնը դողդողալով, կուչ ու ձիգ գալով կատարել դատարկ պատերի մէջ։ Եւ այդ՝ մէկ օր չէ, երկու օր չէ, այլ սպասաւորի ամբողջ կեանքում։

Ուղղակի անտանելի տանջանք է սա՝ եկեղեցու գլխաւորապէս մի սյնակ սպասաւորի համար։

Այդ էլ պակաս արգելք չէ գիտակից մարդուն՝ «երկաթէ լուծի տակ» իր գլուխը թեքելու։

Ամփոփելով մեր յօդուածը կասենք, որ անհրաժեշտ է թոյլ տալ եկեղեցու սպասաւորներին կրկնամուսնութիւն մտնելու և դրականապէս լուծել նրանց տարազի, ժամոցի, գանձանակի փոխարէն ռոճիկի և կենսաթոշակի հարցերը։

Վերջին երկու՝ ռոճիկի և կենսաթոշակի՝ հարցի լուծելը աւելի է հեշտանում, երբ լուծուած կը լինի այդ սպասաւորների ֆիզիքական աշխատանքի հարցը, այն է՝ փոխանակ ամենօրեայ իրիկուն, առաւօտ կատարուող երկար ու ձիգ ժամասացութիւնների՝ նախ և առաջ կը կրճատուի այդ ժամասացութիւնը և ապա թոյլ կը տրուի կատարելու այդ՝ շաբաթը մէկ անգամ, միայն կիրակի օրերը. իսկ եթէ տօներ և ծիսակատարութիւններ պատահեն շաբաթուայ մէջ, այդ ուրիշ բան է։

Այն ժամանակ մենք այժմեան հոգևորականների բանակների տեղ կունենանք շատ սահմանափակ թուով սպասաւորներ, և եկեղեցու համար այն ժամանակ դժուար չի լինի հոգալ նրանց ռոճիկի և կենսաթոշակի մասին։

Թուցէ եկեղեցին կարող կը լինի և իր սպասաւորներին ապահովագրել ապահովագրական մի որևիցէ ընկերութեան մէջ սրանց զառամեալ հասակում կամ մահից յետոյ ընտանիքի համար նպաստ ստանալու։

Եկեղեցու սրբերը պէտք է յանձնուեն եկեղեցական պատմութեան, իսկ դրանց պատկերները եկեղեցական մուզէյի զարդը պիտի կազմեն։

Բոլոր աւելորդ և բիրտ ծէսերը, պասերը, արարողութիւնները, ինչպիսիք են «մատաղը», մեռելի կողոպուտը ստանալը հաւ օրհնելը և այլն, ինչպէս նաև «Հրաժարիմք ի սատանայէ», «մեղայ» աղօթքները, եկեղեցուց դուրս պիտի նետուեն։

Եկեղեցական գրաբար լեզուն պէտք է փոխել ժողովրդին հասկանալի աշխարհաբարով։

Գործադրել եւրօպական ձայնագրութիւն։ Բառաձայն երգեցողութիւնը ստիպողական պիտի անել։ Եկեղեցու մէջ թոյլատրուած քշոցի, խշոցի և ցնծղայի փոխարէն պիտի ունենալ այնտեղ երգեհոն*)։

Պիտի ունենալ եկեղեցում նստարաններ ժողովրդի համար։

---

*) Մանչեստրի հայոց եկեղեցում վաղուց արդէն կայ։

Եկեղեցու սպասաւորը պարտաւոր է ամեն կիրակի բարոյագիտական քարոզներ և խրատներ խօսել։

Այսպիսի բարեփոխութիւնները եկեղեցու մէջ, որոնք չեն դիպչի Նրա դօգմատներին, դաւանանքին և ոչ էլ եկեղեցու սպասաւորների շահերին, մեր կարծիքով՝ անհրաժեշտ են ու անյետաձգելի։ Այդ բարեփոխութիւնները փոքր ի շատէ կարգ ու կանոն կը մտցնեն Նրա այժմեան քաօսային դրութեան մէջ, որից գլուխ չի հանում ոչ մի առաջնորդ, կաթողիկոս, ինչպիսի լաւ յատկութիւններով էլ որ սա օժտուած լինի։

Ցանկալի էր, որ այժմեան տեղապահութեան օրով առաջարկուէր բոլոր հայ թեմերին եկեղեցու բարեփոխութեան համար ծրագիրներ մշակել և ներկայացնել Էջմիածնին, իսկ այստեղ նշանակել տալ մի առանձին յանձնաժողով՝ կազմելու բոլոր ծրագիրներից, որոնք նախօրօք ներկայացուած կը լինեն, մի ընդհանուր ծրագիր, որի հետ մանաւորապէս կը ծանօթանան վեհարանում կաթողիկոսի ընտրութեան առիթով Էջմիածին գնացող պատգամաւորները, և ապա այդ ծրագիրը ներկայացնել կաթողիկոսին՝ լուծելու ընդհանուր ազգային ժողովի կարգադրութեամբ կամ իր՝ կաթողիկոսի իրաւունքով, ինչպէս որ կը թոյլատրեն հանգամանքները։

Հէնց այս տեսակէտից մենք սկզբում ասացինք, որ ապագայ կաթողիկոսի հայեացքները և համոզմունքները կարևոր դեր կարող են խաղալ այդ գործում եկեղեցու մէջ օդանցքներ և լուսանցքներ բաց անելու, մաքրելու Նրա մթնոլորտը և լոյս սփռելու Նրա մութ անկիւնները։

Հայ եկեղեցու բարեփոխութեան հարցը հրամայողական է այժմ։

ԱՐ. ՏԷՐ-ԱԲՐԱՀԱՄԵԱՆ

# ՌՈՒՍԱԿԱՆ ԿԵԱՆՔ

---

*Ներկայ տարուայ յունիս ամսի ռուսական ամսագրերի ու լրագիրների համարների էջերը նուիրուեցին գրական ամենալաւագոյն յիշողութիւններին հռչակաւոր ռուս կրիտիկոս Բէլինսկիի ծննդեան հարիւրամեակի և հռչակաւոր ռուս դրամատուրգ Օստրօվսկիի մահուան քսան-հինգ ամեակի առիթով։ Սակայն երջանիկ գրական անցեալի քաղցր յիշողութիւններին տեղի տուին կսկիծն ու սուգը այն մեծ կորուստի առիթով, որ ունեցաւ ռուսական գիտութիւնը յանձին պրօֆէսօր-ակադէմիկոս Կլիւչեվսկիի, որ ռուսական պատմագիտութեան ամենաականաւոր գիտնական ներկայացուցիչներից մէկն էր։*

*Զարմանալի զուգադիպութեամբ այդ երեք հռչակաւոր անունների հետ սերտ կերպով կապուած է երեք շկօլաների կամ գրական-գիտական զօրեղ ուղղութիւնների հիմնաւորումը, որ այնքան բարերար ազդեցութիւն ունեցաւ յետագայ սերունդների վրայ։*

*Վիսսարիօն Բէլինսկին եղաւ առաջին ռուս գրական քննադատը, որից սկիզբն առաւ ռուսական գեղարուեստական գրականութեան քննադատական գրականութիւնը։*

*Ալէքսանդր Օստրօվսկին բարձր զարգացման հասցրեց իր երկերով ռուսական թատերական գրականութիւնը, իբրև առաջնակարգ ռուս դրամատուրգ։*

*Վասիլիյ Կլիւչեվսկին հռչակուեց իբրև առաջնակարգ պատմագէտ ռուսական պատմագիտութեան, որի դասախօսութիւնները գրաւում էին բազմաթիւ ուսանողներ, մինչդեռ առաջ, ինչպէս վկայում է պրօֆ. Միլիւկօվը, ռուսական պատմութիւնը ոչ ոքի չէր հետաքրքրում և մինչև իսկ ուսանողութեան կողմից որոշ չափով արհամարհուած էր։*

Վիսսարիօն Բէլինսկին ծնուել է 1810 Թ. և վախճանուել 1848 Թ.։ Հայրը նաւային բժիշկ էր։ Սկզբնական կրթութիւնը ստացաւ Պենզայի նահանգի Չեմբար գիւղաքաղաքի գաւառական դպրոցում, ապա Պենզայի գիմնազիայում և Մօսկվայի համալսարանում։ Ուսանող ժամանակ նա շփվում էր գրական-գիտական ազատամիտ շրջաններին (Գերցէն, Օգարեվ, Բակունին և այլն)։ Յետագայում նա արտաքսուեց համալսարանից իր գրած մի թատերական երկի համար։

Առաջին լուրջ քննադատական յօդուածը, որ տպուեց 1834 Թ. «Телескопъ» ամսագրում և կրում է «Գրական երազանքներ» խորագիրը, ունեցաւ մեծ աջողութիւն և որոշեց ընդմիշտ Բէլինսկիի գրական գործունէութեան ուղին։ Այդ ժամանակից նա տարուեց գրական գործունէութեամբ՝ իբրև առաջնակարգ կրիտիկոս՝ և զանազան ժամանակաշրջաններում աշխատակցեց ամենաառաջադէմ ամսագրերին՝ «Отеч. Записки» և «Современникъ» և այլն։ Բէլինսկին իր գրական-կրիտիկական մի շարք յօդուածներով հիմք դրեց ռուսական կրիտիկայի և մինչև օրս էլ դեռ ունի ազդեցութիւն ռուս գեղարուեստական գրականութեան վրայ, ստեղծեց բազմաթիւ հետևողներ, որոնք սերունդէ սերունդ ազդվում և ներշնչվում էին նշանաւոր կրիտիկոսի քարոզած գաղափարներով։

Վ. Բէլինսկին օժտուած էր աստուածային այն կայծով, որ հնարաւորութիւն է տալիս շուտ ըմբռնելու, նախատեսելու և որոշելու այն իսկական ուղին, որ տանում է գրականութիւնը դէպի ծաղկումն ու զարգացումն, անմիջապէս նոր գրողի ըսկզբնական երկերից գուշակելու, թէ ինչ է դառնալու և ինչ պէտք է անի անյայտ նոր գրողը և այլն։ Աստուածային այդ բնածին գանձի հետ նա ունէր և մի ուրիշ գերազանց յատկութիւն. իր ամբողջ կեանքի ընթացքում և իր բոլոր գրուածքների մէջ նա որոնում, ձգնում էր գտնել ճշմարտութիւնը։

Վ. Բէլինսկին իր այդ որոնումների միջոցին շատ անգամ ընկնում էր մոլորութիւնների մէջ, սակայն շնորհիւ իր վեհ, մաքուր, խորաթափանց հոգու և զօրեղ մտաւոր կարողութեան՝ միշտ նրա միտքն ու զօրեղ գրիչը հանդէս էին գալիս պաշտպանելու ճշմարիտն ու գեղեցիկը մարդկութեան օգտին։

Բէլինսկին մի ժամանակ տարուեց հեգելեան փիլիսոփայութեամբ և աշխատում էր իրականութիւնը արդարացնել հեգելեան մի թէզիսով՝ իրականութեան մէջ ամեն ինչ խելացի է. սակայն շուտ զգաց այդ վարդապետութեան միակողմանիու-

թիւնը. յետագայում նա տարուեց նաև սօցիալիզմով, բայց նրա բարձր բարոյական-հոգեկան աշխարհը զերծ մնաց ամեն տեսակ ծայրայեղութիւններից, ու նա մինչև մահը անդադրում և աննկուն տգնում էր ճշմարտութեան որոնումների մէջ։

Առաջին ռուս հռչակաւոր կրիտիկոսի շնորհիւ ռուս հասարակութիւնը ըմբռնեց ու հասկացաւ մանաւանդ Պուշկինին, Գրիբօեդօվին, Գօգօլին և Լերմօնտօվին, որոնց տաղանդի և երկերի լուսաբանութեանն է նուիրուած Բէլինսկիի կրիտիկայի խոշոր մասը։ «Մենք չունենք գրականութիւն,—ասում էր Բէլինսկին.—ես այդ կրկնում եմ հրճուանքով և բաւականութեամբ, որովհետև այս ճշմարտութեան մէջ եմ տեսնում ապագայ աջողութեանց գրաւականը... Այժմ մեզ հարկաւոր է ուսում, գիտութիւն և էլի ուսում»... Հէնց որ երևացին Գօգօլի պատմուածքները (ПОВѢСТИ) և Կօլցօվի ոտանաւորները, Բէլինսկին ոգևորուած յայտնեց, որ արդէն կարելի է յուսալ լաւագոյն ապագայի. վերոյիշեալ երկերի մէջ նա տեսնում է ռուս գրականութեան նոր դարաշրջանի սկիզբը։ Մեծ կրիտիկոսին չվիճակուեց երկար ապրել. գրական ծանր աշխատանքը, որն և նրա ապրուստի միակ միջոցն էր, և նիւթապէս անապահով վիճակը քայքայեցին նրա առողջութիւնը։ Բէլինսկին հիւանդացաւ թոքախտով, անցաւ բուժուելու նպատակով Կովկաս և արտասահման, սակայն ոչինչ չօգնեց, և 1848 թուին, 38 տարեկան հասակում, աւանդեց իր հոգին։

Անմահ կրիտիկոսի գերեզմանը մինչև օրս էլ դեռ չէ արժանացել նոյն իսկ մի համեստ արձանի, ու նրա անշուք դամբարանը մի կենդանի վկայ է մարդկութեան ապերախտութեան իր մեծ պաւակների հանդէպ։

*
* *

Ռուսական կենցաղագրական կօմեդիայի ստեղծող՝ Ալէքսանդր Նիկօլայեվիչ Օստրօվսկին ծնուել է Մօսկվայում 1823 թ.։ Հայրը հոգևոր ճեմարանն աւարտած՝ պետական աստիճանաւոր էր քաղաքացիական ծառայութեան մէջ։ Գիմնազիան աւարտելուց յետոյ Օստրօվսկին մտաւ Մօսկվայի համալսարանի իրաւաբանական ֆակուլտէտը, սակայն մի պրօֆէսօրի հետ ունեցած անախորժութիւններից յետոյ թողեց նա համալսարանը ու ծառայութեան մտաւ պետական հաստատութեան այլևայլ բաժանմունքներում։ Յետագայում նա օգնում էր նաև իր հօրը,

որ պարապում էր փաստաբանութեամբ, գործ ունենալով գլխաւորապէս Մոսկվայի վաճառականութեան հետ։ Ծառայութիւնը ամենևին չէր հետաքրքրում Օստրովսկիին. նա հէնց սկզբից տարուեց թատրոնով և թատերական գրականութեամբ։ Թէ ծառայութիւնը և թէ փաստաբան հօր կլիէնտ-վաճառականների շրջանը միջոց ու հնարաւորութիւն տուին Օստրովսկիին՝ շատ մօտիկից ուսումնասիրելու Մոսկվայի ռուս առևտրականներին, ռուս վաճառականական կենցաղը իր ամբողջ մտաւոր-հոգեկան աշխարհով, մի խօսքով այն շրջանը, որտեղից յետագայում քաղեց իր թատերական պանծալի երկերի գլխաւոր նիւթերը, որով նա ստեղծեց ու սկիզբ դրեց ռուսական կենցաղագրական կօմեդիային։

Մինչև Օստրովսկիի գրական-թատերական ասպարէզում երևալը՝ ռուս թատրոնը չունէր արժանաւոր ռեպերտուար, շատ աղքատ էր պիէսներով. Ֆօնվիզինի «Недоросль» և «Бригадиръ» պիէսները արդէն համարվում էին բեմական տեսակէտից հնացած և չէին ներկայացվում. միմիայն Գօգօլի «Женитьба» ու «Վերաքննիչ» և Գրիբօեդօվի «Խելքից պատուհաս» պիէսներն էին գրաւում հասարակութեանը, սակայն այդ քիչ էր. մնացեալ պիէսները ֆրանսիական մելօդրամներ էին կամ ֆրանսիական ու գերմանական թատերական գրականութիւան շաբլօնով կազմած՝ ռուս հեղինակների շատ թոյլ պիէսներ, որոնք ներկայացվում էին մինչև իսկ մայրաքաղաքի թատրոններում։ Այսպէս էր անցեալ դարի 50-ական թուականներին, երբ առաջին անգամ հանդէս եկաւ երիտասարդ Օստրովսկին Մոսկվայի Փոքր թատրոնում։ 1853 թ. հռչակաւոր ռուս դերասանուհի Կօսիցկայայի բենեֆիսին տրուեց մեծ աջողութեամբ Օստրովսկիի «Не въ свои сани не садись» պիէսը։ Յետագայում առանձնապէս հռչակուեց Օստրովսկին «Свои люди сочтемся» կօմէդիայով, որը սկզբում ցենզուրան արգելել էր, և այլ պիէսներով։ Այդպիսով Օստրովսկին հիմք դրեց ինքնուրոյն ռուսական ռեպերտուարի, որը ստեղծուեց նրա շնորհիւ և որի կատարելագործման ու զարգացման համար աշխատում էր նա իր ողջ կեանքի ընթացքում։ Այն ժամանակի յայտնի կրիտիկոսները՝ Գրիգորեվ, Դօբրօլիւբօվ և Պիսարեվ՝ պաշտպանում ու դրուատում էին Օստրովսկիի երկերը, որոնք մեծ աջողութեամբ դրվում էին թէ գաւառական և թէ մայրաքաղաքի թատրոններում։ Ականաւոր տաղանդի թատերական երկերը թէ իրանց հիւսուածքով, թէ բովանդակութեամբ և թէ իմաստով ունեցան և հիմա էլ ունեն առաջին կրթիչ նշանակութիւն և ազդեցու-

*թիւն ռուս հասարակութեան վրայ։ Օստրովսկիի տաղանդաւոր գրիչը բեմական վառ գոյներով պատկերացնում է ռուս հասարակութեան ամենամնասակար, բացասական կողմերը. Նա տալիս է իսկական պատկերը* խաւարի թագաւորութեան *(Դոբրոլիւբով), գլխաւորապէս ռուս վաճառական դասի և այլ խաւերի անծայր տգիտութեան, տիրող նախապաշարմունքների, ընտանեկան կազմի թերութիւնների, իբրև արդիւնք ծայրայեղ ֆանատիկոսութեան և բռնակալական հակումների, որոնք յատուկ են մանաւանդ ռուս որոշ դասակարգին։ Օստրովսկիի պիէսները ռումբի պէս ցնցեցին ռուս հասարակութեան։ Աջողութեանը մեծապէս նպաստում էր նաև այն հանգամանքը, որ աջող զուգադիպութեամբ 50-ական և 60 ական թուականներին ռուս թատրոնը ունէր իր բեմի ամենատաղանդաւոր ու մեծ հռչակ ստացած դերասան-դերասանուհիներ՝ Ֆեդոտովա, Նիկուլինա, Վասիլեվա, Մեդվեդեվա, Ակիմովա, Երմոլովա, Սադովսկի, Սամարին, Շումսկի, Ֆեդոտով, Ռադսկազով, յետագայում Լէնսկի և այլք, որոնց տաղանդաւոր խաղը կրկնակի ոգևորութիւն էր պատճառում հասարակութեան։*

*1886 թ. Օստրովսկին նշանակուեց Մոսկվայի կայսերական թատրոնների գեղարուեստական և ռեպերտուարական մասի կառավարիչ։ Օստրովսկին մտցրեց մի շարք բարենորոգումներ, իբրև կառավարիչ, վերաբացեց դրամատիք կուրսեր և այլն։ Օստրովսկին տոգորուած էր նաև ժողովրդական թատրոնի գաղափարով, մինչև իսկ Ալէքսանդր III կայսեր ներկայացրեց այդ մասին մի բացատրական յայտագիր, որն արժանացաւ բարձրագոյն հաւանութեան, սակայն շատ բան, որ ունէր ծրագրած, չկարողացաւ մեծ դրամատուրգը իրագործել, որովհետև հիւանդութիւնը, որով տառապում էր նա և որը սաստկացաւ նրա անընդհատ գրական-թատերական դժուարին գործունէութեան պատճառով, ստիպեց նրան հեռանալ քաղաքից գիւղ։ 1886 թ. յունիսի 2-ին հանգաւ ռուս թատրոնի ամենափայլուն աստղը։ Օստրովսկին նիւթական մեծ զրկանքներ ու նեղութիւններ կրեց, որոնք և մեծ չափով նպաստեցին նրա հիւանդութեան սաստկանալուն։ Վերջին տարիները նա ստանում էր 3000 ռ. կենսաթոշակ, որի մասին մեծ դրամատուրգը սիրում էր ասել. «Սկիւռին առաջարկեցին մի կողով ընկոյզ այն ժամանակ, երբ նա արդէն ատամներ չունէր»։ Կարևոր ենք համարում յիշատակել այն փաստը, որ մեր տաղանդաւոր դրամատուրգ ալեզարդ Սունդուկեանը, ինչպէս ինքն է վկայում իր*

յիշողութիւնների մէջ, որ պատմել է Ա. Քալանթարին («Ալոր» 1910 թ. № № 1 և 2, «Հանդիպումներ Գաբրիէլ Սունդուկեանի հետ»), մեծապէս ազդուել է Օստրօվսկիի երկերից իր ուսանողութեան ժամանակ Ռուսաստանում, ուր այդ միջոցին շարունակաբար տրվում էին նրա պիէսները՝ առաջացնելով մեծ ոգևորութիւն ամենուրեք։

* * *

Ինչպէս սկզբում նկատեցինք Վասիլիյ Օսիպօվիչ Կլիւչևվսկիի մահով, որ տեղի ունեցաւ մայիսի 12-ին, ռուս պատմագրութիւնը կորցրեց իր ամենափայլուն ներկայացուցիչներից մէկին։ Նա քահանայի որդի էր և Մօսկվայի համալսարանն աւարտելուց յետոյ դասաւանդում էր ռուսական պատմութիւնը Ալէքսանդրեան Զինուորական Դպրոցում, ապա Մօսկվայի Հոգևոր Ճեմարանում և վերջն էլ համալսարանում։ Շատ կարճ ժամանակամիջոցում նա արժանացաւ ռուսական պատմութեան մագիստրոսի և դօկտօրի գիտական աստիճաններին, հռչակուեց իբրև առաջնակարգ պրօֆէսօր ռուսաց պատմութեան և յետագայում էլ ընտրուեց Գիտութեանց Ճեմարանի կողմից ակադեմիկոս։ Նրա բազմաթիւ գիտական աշխատութիւններից աչքի են ընկնում և մեծ ժողովրդականութիւն վայելում մանաւանդ դասախօսութիւնները ռուսաց պատմութեան։ Այդ դասախօսութիւնները իրանց կենդանի, պատկերաւոր ոճով, սրամիտ համեմատութիւններով և գիտական լուսաբանութեամբ մեծ թւով ուսանողներ էին գրաւում և մինչև իսկ այժմ էլ վէպի պէս հեշտութեամբ ու հետաքրքրութեամբ կարդացվում են։ Շատ ափսոս, որ հիւանդութիւնն ու մահը արգելք եղան այդ աշխատութիւնը վերջացնելու։ Վ. Կլիւչևվսկին դասաւանդում էր Աբասթումանում ռուսաց պատմութիւն հանգուցեալ Թագաժառանգ Մեծ Իշխան Գէօրգիին, իսկ 1905 թ. պետերհօֆեան պալատական նախապատրաստական խորհրդակցութիւններին նա ևս հրաւիրուած էր մասնակցելու և իր ճառերով ռուսական անցեալի և ներկայի մասին զօրեղ տպաւորութիւն էր թողել բարձրաստիճան խորհրդականների վրայ։ Ինչպէս վկայում է Միլիւկօվը, ազնուական դասը շատ դժգոհ էր Կլիւչևվսկիից, որ իր ճառերից մէկում յայտնել էր, թէ հայրենիքին ծառայութիւններ միայն ազնուականութիւնը չէ որ մատուցել է, ու ազնուականութեան ազդեցութեան անկման պատասխանատուութիւնը

ընկնում է հէնց իրա՝ ազնուականութեան վրայ, որ անշնորհք գտնուեց օգտուելու իր ստացած բոլոր արտօնութիւններից։ Պետերհօֆեան խորհրդակցութեանց մէջ նրա արտասանած ամենից երկար, զօրեղ և կրակոտ ճառը վերջանում է հետևեալ խօսքերով. «Да избави насъ Богъ отъ опасности, что въ народномъ воображенiи возстанетъ мрачный призракъ сословнаго царя». («Թող Աստուած ազատէ մեզ այն վտանգից, եթէ ժողովրդի երևակայութեան մէջ կը վերականգնուի դասակարգային ցարի մռայլ պատկերը»)։

ԿԱԼԽԱՍ

---

# ԱՐՏԱՍԱՀՄԱՆԵԱՆ ԿԵԱՆՔ

## ԱԼԲԱՆԻԱՅԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ ՇՈՒՐՋԸ

*Բալկանեան թերակղզուց ստացուող լուրերը վերին աստիճանի անհանգստութիւն են պատճառում։ Թէև քաղաքական աշխարհը դրանց այնքան էլ մեծ հաւատ չէ ընծայում, ի նկատի առնելով այն հանգամանքը, որ այդ ամենը առ հասարակ բղխում են Վիէննայից։ Եւ եթէ այդ լուրերին հաւատ ընծայուէր, այն ժամանակ ցայսօր Թիւրքիայի և Չերնոգորիայի միջև պատերազմական գործողութիւնները պիտի որ սկսուած լինէին, մինչդեռ մենք տեսնում ենք, որ ոչ միայն պատերազմ չէ սպասվում, այլ և ճգնաժամը անցնում է, ստանալով օր ըստ օրէ հանգստացուցիչ բնոյթ։*

*Միանգամայն հասկանալի կը լինէին այս ուռուցիկ լուրերի տարածման պատճառները, եթէ մենք նկատի առնելու լինէինք, որ Վիէննայի դիւանագէտները ամենամեծ չափերով են շահագրգռուած Բալկանների գործերում, իսկ բօրսային խաղերի կազմակերպողներն ևս անմասն չեն մնում այսօրինակ լուրերի տարածման գործում, զուտ սպեկուլատիվ շահերից դրդուած։*

*Բայց որչափ էլ ուռած լինէին ստացուող լուրերը, այնուամենայնիւ Բալկաններում կատարվում էր ոչ սովորական մի երևոյթ, և այդ այն էր, որ ամբողջ Ալբանիան բռնկուած էր ապստամբութեան կրակով։ Իսկապէս որ ապստամբութեան թատերավայրի գլխաւոր դերակատարները—մի կողմից մալիսօրները, իսկ միւս կողմից թիւրքական զօրքերը—ամէն ճիգ ու ջանք թափում էին՝ առաջինները իրանց 3000—4000 ըմբոստներով յաղթական դուրս գալու և իրանց արդար բողոքի ձայնը լսելի անելու ամբողջ քաղաքակիրթ աշխարհին, իսկ վերջինները՝ թիւրքական զօրքերը՝ իրանց տասնապատիկ ան-*

գամ աւելի զինուորներով, որոնց թիւը վերջերս 40,000-ի բարձրացաւ, աշխատում էին խեղդել, ճզմել, խանձարուրի մէջ խեղդամահ անել ըմբոստութիւնը, չվարանելով նոյն իսկ արեան բաղանի վերածելու լեռնային ըմբոստ Ալբանիան։

Եւ չափազանց խոշոր ոյժ ունենալով՝ Թիւրքերը երբ արդէն կարծում էին, թէ մօտ է այն ժամը, երբ իրանց աշխատանքը աջողութեամբ պիտի պսակուէր, անսպասելի կերպով ապստամբեցին նաև միրիդիտները ու միացան մալիսօրներին։

Եւ որչափ որ դիւրին էր մալիսօրներին յաղթելը, միրիդիտների՝ ապստամբութեանը միանալը շատ դժուարին կացութիւն ստեղծեց թիւրքական զօրքերի համար, որովհետև վերոյիշեալները համարվում են Ալբանիայի ամենաբազմաթիւ և ուժեղ ցեղը, որոնք կարող են մօտ 20,000 կռուող դուրս բերել. իսկ այդպիսի մի ոյժի հետ գործ ունենալը այնչափ էլ հեշտ չէ։ Եւ եթէ միացնենք այս հանգամանքին նաև ալբանների բնածին քաջութիւնն ու մանաւանդ երկրի լեռնային անմատչելիութիւնը, որ մեծապէս նպաստում է ալբաններին՝ ի վնաս Թիւրքերի, որոնք ծանօթ չեն այդ լեռնային երկրի խուլ ու խութերին, հետևաբար և ամեն րոպէ ենթակայ են յանկարծակի յարձակման, ինչպէս և այդ եղաւ շատ անգամ ապստամբութեան ընթացքում, այն ժամանակ պատկերը կատարեալ կը լինի։ Անհրաժեշտ է նաև ի նկատի ունենալ, որ այս դէպքում շահագրգռուած չէ միայն Թիւրքիան, այլ ամբողջ Եւրոպայի ուշադրութիւնը իր վրայ է կենտրօնացրել ալբանական ապստամբութիւնը, իսկ մեծ ու փոքր պետութիւնները այնչափ կենսական շահեր ունեն Բալկաններում, որ չէ կարելի չակնկալել նաև ընդհանուր բարդութիւնների ծագումը, որը ծայրայեղ դէպքում խոշոր վտանգի կերպարանք կարող է ստանալ և դառնալ միջազգային բնոյթ կրող մի հարց։

Ալբանիայի վրայ վաղուց ի վեր աչք ունեն՝ մի կողմից Աւստրիան, իսկ միւս կողմից Իտալիան, և այդ պետութիւններից ում ձեռքն էլ ընկնի այս երկիրը, նա կը դառնայ լիակատար տէր Ադրիական ծովի։ Ահա այս հանգամանքն է, որ պետութիւններին իրար է խառնել, և մէկը միւսից ուզում է առաջնութեան դափնին յափշտակել։

Եթէ սրան աւելացնենք ալբանների վաղուցուայ իղձը, ունենալ ինքնավար Ալբանիա, որպիսի ձգտումը մեծ չափերի է հասել Ներկայիս շնորհիւ երիտասարդ-թիւրքերի կարճատես քաղաքականութեան, այն ժամանակ հասկանալի կը դառնայ, թէ ինչպիսի՜ բարդ դրութիւն է ստեղծուած Թիւրքիայի հա-

*մար։ Եւ եթէ Թիւրքիայի տհաս դիւանագէտները այնչափ խելահասութիւն ցոյց տային, որ կարողանային Ալբանիային տալ ինքնավարութիւն և լայնարձակ ներումն բոլոր գործողութիւնների, այն ժամանակ նրանք առաջն առած կը լինէին գալիք այն բարդութիւնների, որոնք մեծապէս կը վնասեն Թիւրքիայի ամբողջութեանը։*

*Իրաւ է, ալբանները, որչափ էլ նրանք ուժեղ և տոկուն լինեն ապստամբութեան ընթացքում, հազիւ թէ կարողանան մինչև վերջ գլուխ տանել շնորհիւ իրանց բազմացեղութեան և կուլտուրական յետամնացութեան, բայց և այնպէս նրանց չը զիջելով՝ օսմանեան պետութիւնը շատ բան կը կորցնի, իսկ շահողները կը լինեն դարձեալ օտարները, այս դէպքում Աւստրիան կամ գուցէ և Իտալիան, որոնցից մէկն ու մէկը կարող է առիթից օգտուել, և եթէ գրաւել իսկ չկարողանայ Ալբանիան, գոնէ կը լինի նրա խնամակալը։ Մասնաւորապէս այսպիսի երկիւղ է սպառնում Թիւրքիային Աւստրիայի կողմից, որը անցեալներում իր խնամակալութեան ներքոյ ունենալով Բօսնիա-Հերցէգը՝ վերջ ի վերջոյ տիրեց նրան և միացրեց աւստրիական կայսրութեան հետ։*

*Ասում ենք, որ, ճիշտ է, Ալբանիան յետամնաց է կուլտուրապէս, նա չունի պետականութեան համար պատրաստի գործիչներ, չկայ նրանում ազգային միութեան, լիակատար համերաշխութեան ոգի՝ շնորհիւ իր բազմատարրութեան, հետևաբար և սպասել չէ կարելի, որ ստեղծուի ինքնուրոյն* ալբանական պետութիւն, *բայց և ճիշտ է այն, որ Ալբանիան կտրուելով Թիւրքիայից կը դառնայ կռուախնձոր պետութիւնների ձեռքում, որով Թիւրքիան ընդմիշտ կը կորցնի նրան, իսկ Ալբանիայի շնորհիւ խախտուած կը լինի եւրոպական խաղաղութեան հաւասարակշռութիւնը, որից յամենայն դէպս աւելի կը վնասուի Թիւրքիան, քան որևէ մի պետութիւն։ Ուրեմն հէնց իր շահի տեսակէտից Թիւրքիան պէտք է աշխատի հնար եղածին չափ շուտով հանգցնել հրդեհը, քանի նա չէ դուրս եկել իր նեղ սահմաններից։*

Յ. Գ.

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

---

**«Кавказъ».** Матеріалы по археологіи Кавказа, собранные экспедиціями Императорскаго Московскаго Археологическаго Общества, снаряженными на ВЫСОЧАЙШЕ дарованныя средства. Выпускъ VI. Москва, 1911. Подъ ред. гр. Уваровой.

*(Կովկասի հնախօսութեան մասին նիւթեր, հաւաքուած՝ Մոսկվայի Կայսերական Հնագիտական Ընկերութեան կողմից, յարդարեալ՝ գիտական արշաւանքների ժամանակ՝ Բարձրագոյն շնորհուած միջոցներով։ Դրուագ* VI. *Մոսկվա, 1911, խմբագրութեամբ կոմսուհի Ուվարովայի)*

*Այս ստուար գիրքը, բաղկացած՝ 194 էջերից,* in 4°, *Ա. Իվանովսկիի* (А. А. Ивановскій) *երեքամեայ հետազօտութիւնների արդիւնքն է, որ նա կատարել է Անդրկովկասում, յատկապէս Երևանի և Գանձակի նահանգներում 1893, 1894 և 1896 թուականներին։ Գրքի մէջ մենք գտնում ենք 16 լուսատիպ աղիւսակներ, 97 նկարներ, իսկ վերջում Անդրկովկասի քարտէզը։*

*Հեղինակը իր առաջաբանում ասում է հետևեալը. «Մոսկվայի Կայսերական Հնագիտական Ընկերութիւնը բարեհաճեց ուղարկելու 1893 թ. պ. Նիկոլսկիին* (М. В. Никольскій) *և ինձ Անդրկովկաս՝ ուսումնասիրելու դիտաւորութեամբ այն յիշատակարանները, որոնք մնացել են այնտեղ Վանի թագաւորների ժամանակից։ Պ. Նիկոլսկիի հետազօտութիւնների արգասիքը**) *լոյս տեսաւ «Կովկասի Հնախօսութեան մասին Նիւթերի* V *դրուագում»։ Ես հետազօտեցի Սևանայ լճի* (Гокчи) *շրջակայքը և էստամպաժի միջոցով արտահանեցի նրա ափերում գտնուած բևեռագիր արձանագրութիւնները, առանձին ուշադրութիւն ընծայելով Կեօլանը-Ղըրլան գիւղի մօտ եղած յայտ-*

---

*) *Մ. Նիկոլսկիի երկասիրութեան խորագիրն է՝ «Անդրկովկասի բևեռագիր արձանագրութիւններ», որոնց հայերէն թարգմանութիւնը մենք լոյս ընծայեցինք «Բազմավէպ» հանդիսում և ուրոյն գրքով, Վենետիկ, 1897. Մ. Տ.*

նի արձանագրութեան վրայ, որի բաւարար օրինակից գիտութիւնը առաջ զուրկ էր։ Դրանից յետոյ ես մի քանի խուզարկութիւններ կատարեցի Երևանի տափարակում, ուր Տաշբուրուն գիւղից ոչ հեռու՝ գտայ մի հին քաղաք, հողի տակ ծածկուած։ 1893 թ. ամառը սուղ ժամանակս հազիւ ներեց ինձ պեղել այս քաղաքում մի ընդարձակ շէնք, յատկապէս այն տեղում, ուր, ինչպէս պատմում էին, գտնուել էր մի քար Մենուա թագաւորի բևեռագիր արձանագրութեամբ։ 1894 թ. Ընկերութիւնը կրկին ուղարկեց ինձ Անդրկովկաս՝ քաղաքի պեղումները շարունակելու և, եթէ հնար լինի, այցելելու նաև Կարսի նահանգի մի քանի վայրերը։ Յիշեալ քաղաքի պեղումները ինձանից բաւական ժամանակ խլեցին, բայց այնուամենայնիւ ինձ աջողուեց յաճախել Թիւրքիայի և Պարսկաստանի սահմանակից կողմերը և առաջնում, Բայազիդ քաղաքի բերդում, գտնել ժայռի մէջ քանդակուած սենեակներ և նրանց մուտքի մօտ՝ քանդակներ։ Ոչ հեռու Երևանից՝ ես բախտ ունեցայ գտնել և Մոսկվա բերել մի նոր բևեռագիր արձանագրութիւն, որ պ. Նիկօլսկին նկարագրեց Կանլը-Թէփէի անուամբ, որովհետև դա առաջ գտնուած է եղել նոյնանուն բլրի վրայ։ 1894 թ. ամառը ես այցելեցի Կարսի նահանգի մի քանի տեղերը, առանձին ուշադրութիւն դարձնելով Սարիղամիշի վրայ, ուր գտնուած է մի բևեռագիր արձանագրութիւն, որ պահվում է Թիֆլիսի թանգարանում։ Այս ճանապարհորդութեանս հետևանքն էր մի շարք հնագոյն բերդերի գիւտը, որոնք վերաբերում են վանեան թագաւորների շրջանին և հնարաւորութիւն են տալիս որոշել այն ճանապարհներից մի քանիսը, որոնցով անցնում էին նրանց բանակները պատերազմների արշաւանքների միջոցին։ Վերջին խուզարկութիւնս ես նուիրեցի Չալդըր լճի ափին մնացած ընդարձակ և, ըստ ներքին կազմութեան, տարօրինակ ամրոցին։ 1896 թ. Մոսկվայի Հնագիտական Ընկերութիւնը նորից յանձնարարութիւն տուեց ինձ գնալ դէպի Անդրկովկաս, և այս անգամ ուղևորուեցի Գանձակի նահանգը, պեղելու այն գերեզմանները, որոնք կոչվում են «քարէ արկղներ» (steinkistengräber)։ Նահանգի զանազան տեղերում կատարած պեղումներս ընծայեցին ինձ ճոխ և շատ թանկագին ժողովածու պէս-պէս բրօնզէ կերտուածների և մեծ քանակութեամբ հետաքրքրական կաւամանների»։

Այնուհետև Ա. Իվանովսկին բացատրում է երեք տարիների ընթացքում հաւաքած նիւթերի մշակութեան ուշանալու պատճառները, որոնք են՝ մի կողմից նրա հիւանդութիւնը, որի շնորհիւ նա հարկադրուած էր գնալ զանազան ժամանակ

հանքային ջրեր, Օդեսսայի լիմանը, Ղրիմ և միայն 1905 թ. վերջացնում է գործը և յանձնում է այն՝ տպագրութեան. իսկ միւս կողմից՝ անակնկալ հրդեհը Սըտինի տպարանի, ուր արդէն վեց տպագրական թերթեր շարուած էին և կրակի ճարակ դարձան, և հեղինակը պարտաւորուեց նորից վերականգնել կորած բնագիրը և այսպէս, վերջապէս, լոյս ընծայեց այս տարի։ Մագիստրոսական քննութիւններն էլ ոչ պակաս արգելառիթ են եղել սոյն երկի հրատարակութեանը։

Կամենալով գաղափար տալ ընթերցողին յարգելի հնախօսի սոյն գրքի մասին, յիշենք նախ՝ դրա ցանկը, ապա խօսենք բովանդակութիւնից։ 1) Կեօքչայ լճի ջրամբարը. 2) Երևանի տափարակը. 3) Բայազիդ և Մակուի խանութիւնը. 4) Կարսի նահանգում. 5) Գանձակի նահանգում։ Բացատրութիւն լուսատիպերի. Նկարներ բնագրում։

Իբրև լուրջ աշխարհագիր և երկրաբան՝ Ա. Իվանովսկին, յենուելով օտարազգի աղբիւրների վրայ, եւ և հայոց, մանրամասն նկարագրում է Սևանայ լճի դիրքը, որ 1903 մետր բարձր է Սև ծովի մակերևոյթից և գրաւում է 1398,7 քառակուսի կիլոմետրը մի հրապարակ. լիճը ունի ծուռ եռանկիւնի ձև, ձգուելով հիւսիս-արևմուտքից դէպի արևելեան-հարաւ։ Մեծագոյն երկայնութիւնը հասնում է 72,5 կիլոմետրի, իսկ լայնութիւնը՝ 42 կիլոմետրի. լճի ամենանեղ տեղը կրճատվում է մինչև 8 կիլոմետր, երկու ափերի մօտենալու պատճառով՝ Շորակեօլի և Ադ-Թէփէի հրուանդանների միջում։ Ափերի այդպիսի մերձաւորութիւնը կայացնում է լայն նեղուց, որ բաժանում է լիճը երկու անհաւասար ջրամբարների։ Լիճը գտնվում է խորունկ ձորի մէջ, ամենայն կողմից շրջապատուած՝ Փոքր Կովկասի լեռնային բարձր պատերով, որոնց անունները մի առ մի յիշվում են։ Զանազան գետերի հոսանքը, վնասակար ճահիճները, գետակները, լճացած ջրերը նրանց տեղագրութեամբ հանդերձ ճշտիւ որոշուած են և տեղ տեղ լրացնում են հ. Ալիշանի «Տեղագիրը Հայոց Մեծաց» (Վենետիկ, 1855 թ.) և շատ հանգամանօրէն լուսաբանում են երկրի հանքաբանութիւնը, հողի ու ջրի յատկութիւնը, լեռնային քարերի տեսակները,, ստորերկրեայ աղբիւրների առատութիւնը, բազմաթիւ լեռնային հեղեղատները, որոնց ջրերը թափվում են Սևանայ լիճը։ Յիշեալ հեղեղատների և գետակների մեծագոյն մասն, ամառնային ամիսներին, անձրևի պակասութեան շնորհիւ, իսպառ անհետանում են և համեմատաբար շատ քչերը նրանցից—23-ից ոչ աւելի—ամբողջ տարուայ ընթացքում պահպանում են իրանց հոսանքը. դրանք են՝ հիւսիսային կող-

*մից միայն Բալըք-չայը կամ Զուբուխլը. արեւմտեան և արեւմըտեան-հարաւից՝ Կաւար-չայ, որ հոսելով Նոր-Բայազէտի մօտով՝ թափվում է լիճը Շօրակեօլի երկար և նեղ լեզուակի* (коса) *մօտ. Ախ-դաղ, Դալիք-տաշ (կամ Ցոկկար-չայ). փոքր ինչ հարաւ՝ թափվում է կարճ Կեօլ գետակը, որի լայն և խաղաղ հունը՝ հազիւ նշմարելի հոսանքով փոքր լճակի տպաւորութիւնն է գործում. հարաւից՝ Աղ-Եաման-չայ գետը, որ ջրերի ամենամեծ քանակն է տանում դէպի լիճ (իր վերին հոսանքում կոչվում է Այրիճա-չայ), Կարաննըխ, Տու խտուլու, Գիւզէլ-դարա, Ալակեօլ, Գետախ և Կեօլ-չայ. հարաւ-արեւելեան կողմից՝ Կարա-սու, Քըրխ-Բուլաք (կամ Բազար-գեչար), Մազրա և Կասաման. դըրանք բոլորը հոսելով Մազրինեան տափարակով՝ թափվում են Գիլլի լիճը. արեւելեան և հիւսիս-արեւելեանից՝ Շիշկայա, Սիդ, Ջիլ, Արտանըշ, Արտա-չայ և Տօղլուճա։*

*Սեւանայ լճից դուրս է գալիս միայն Զանգա գետը, որ հնագոյն ժամանակներում կոչվում էր Հրազդան. այժմեան անունը նա ստացել է Բջնի քաղաքի հիմնարկութիւնից յետոյ, ինչպէս կարծում է Շօպէնը, երբ արաբացիք տակաւին տիրում էին Հայաստանին. Նրանք գաղթեցրին այստեղ զենգ ցեղերին, որոնք եկել էին Արաբիա Աֆրիկայի արեւելեան կողմից Զանզիբարից։ Իր սկզբում՝ Ելենօվայի ծովածոցի մօտ՝ Զանգա շատ չնչին գետակ է և աստիճանաբար մեծանում է, ընդունելով ճանապարհին առուակներ և գետակներ, յատկապէս՝ աջ կողմից Փամբակի պարից և Փիր-դաղի լեռնային կատարներից։ Առաջին երկու կիլօմետրը գետը հոսում է զուգահեռաբար լճի եզերքին, ապա դառնում է դէպի արեւմուտք և հեռանում է լըճից։ Առաջ գետի հոսանքը հազիւ նկատելի է, բայց* $4^1/_2$ *կիլօմետր անցնելուց յետոյ՝ Հրազդանը* 30—35 *մետր բարձրութիւնից գահավիժում է խոր և անձուկ անդունդը և մինչև Արաքսի դաշտավայրը համնելը լիովին լեռնային գետի բնոյթ ունի։ Հրազդանի երկարութիւնը* 100 *կիլօմետրից չէ անցնում. թափվում է Արաքսի մէջ, որ* 808 *մետր ցածր է Սեւանի լճի ջրերի մակերեւոյթից։ Ենթադրում են, թէ Հրազդանը առաջ չէր հաղորդակցում լճի հետ* (Dubois de Montpereux, Möschel, Эйхвальдъ, Брандтъ *և այլք) և թէ համեմատաբար յետին ժամանակ արհեստական ջրանցք է փորուած լճի և Հրազդանի մօտագոյն վտակի միջև, ըստ էյխվալդի, Մեծին Աբաս* I *շահի հրամանով։ Կարելի է կարծել,—ասում է Ա. Իվանօվսկի,—որ գետի և լճի հաղորդակցութիւնը զանազան ժամանակ եղել է բնական և արհեստական, նայելով Սեւանի ջրերի մակերեւոյթի*

տատանմանը։ Բայց, յամենայն դէպս,—շարունակում է ռուս գիտնականը,—լճի և գետի կապը շատ հին պէտք է համարել, որովհետև լճի ջուրը ներկայումս միանգամայն քաղցր է։ Զանգա գետը, իբրև Անդրկովկասի ոռոգման գլխաւոր երակներից մէկը, ահագին նշանակութիւն ունի Անդրկովկասի հողերի ոռոգման խնդրում։ Պետական կալուածների մինիստրութեան յանձնարարութեամբ Թիֆլիսում 1883 թ. կազմուեց մի առանձին յանձնաժողով, որ այս խնդրի մշակութեամբ զբաղուեց և պատրաստեց մի ուրոյն նախագիծ. իսկ 1889 և 1890 թ. թ. հետազօտութիւններ եղան այստեղ գէն. Ի. Ժելինսկիի ղեկավարութեամբ և ապացուցին, թէ հնարաւոր է Զանգի միջոցով լճից որոշ քանակութեամբ ջուր ստանալ դաշտերի ոռոգման համար։ Սակայն այդ նախագիծը մինչև այժմ անիրագործելի մնաց։ Ապա խօսվում է լճի ջրերի բարձրանալու և իջնելու դէպքերի մասին. օրինակի համար՝ Ցամաքաբերդի մօտ, Սևանայ կղզու հանդէպ, կայ հայոց հին գերեզմանատուն, որ ներկայումս համարեա թէ ջրի տակն է։ Մի քանի՝ հայոց հնագոյն գերեզմաններ Նադեժդին գիւղի մօտ, ծերունիների վկայութեամբ, ծածկուած էին ջրով։ Ափերի կից ցածր տեղերում յաճախակի պատահում են պէս-պէս շինութիւններ, ճանապարհներ, քարեայ շէնքեր, ջրանցքներ, որոնք այժմ ջրի տակն են գտնվում։ Ա. Իվանովսկի հերքում է լճի ջրերի մակերևոյթի տատանման պատճառները. ըստ Hommaire de Hell·ի, դրան առիթ է տուել Սևանայ լճի ջրամբարի անտառների սպառուելը. բայց դա, եթէ տեղի է ունեցել, կարող էր միայն իջեցնել լճի մակերևոյթը, չէ թէ տատանում առաջ բերել։ E. Reclus կարծում է, թէ «կուլտուրայի զարգացումը և ջրի մեծ պահանջը կարող են նպաստել Սևանայ լճի ջրերի իջնելուն կամ պակասելուն», բայց ոչ տատանմանը, նկատում է ռուս գիտնականը։ Դարձեալ՝ ենթադրութիւն կայ, որ իբր թէ Սևանայ լիճը ստորերկրեայ ջրերով միանում է Հայաստանի միւս մեծ լճերի՝ Վանի և Ուրմիայի հետ. սակայն,—յարում է Ա. Իվանովսկին,—այդ անհնարին է, որովհետև դրանք զանազան բարձրութիւնների վրայ են կանգնած և այլն։ Տատանմանը, Ա. Իվանովսկիի կարծիքով, առիթ է տալիս երկրաշարժը, որ սովորական երևոյթ է Անդրկովկասում։ Սևանայ ջրի քիմիական տարրալուծումը, ըստ Ֆ. Ժերվէի, որոշեց հետևեալ գլխաւոր բաղադրեալ մասերը մի լիտր ջրի մէջ։

| | |
|---|---|
| քլօր . . . . | 0, 0819 գրամմ. |
| կիր . . . . | 0, 0488 » |

Ծծմբային անհիդրիտ. . 0, 0109 գրամմ.

Դրանից յետոյ Ա. Իվանօվսկի յիշում է լճի ձկների տեսակը, որոնց երեքը պատկանում է սալմօնի ցեղին (salmonidae)։ 1) Բախտակ, կիրիւշա և իշխան (salmo ischchan kessl), 2) բօջակ (salmo species nova) և 3) գեղարքունի (salmo gegarkuni kessl), և երկուսը կարպի ցեղին, 4) խրամուլի (capoeta sevangi fil.) և 5) barbarus goktschaicus kessl. Ապա հետևում է Սևանայ լճին վերաբերեալ գրականութիւնը։

Այժմ խօսենք գրքի հնախօսականի մասին։

---

II

Կեօքչայ լիճը իր վայրենի ամայութեամբ ապշեցնում է ճանապարհորդներին, և նրանցից շատերը կարծիք յայտնեցին, թէ լճի ափերում մարդիկ սկսեցին բնակութիւն հաստատել միայն անցեալ դարում, թէ երկրի ֆիզիքական-աշխարհագրական պայմանները չեն թոյլ տալիս ենթադրելու, որ այստեղ աւելի հին ժամանակները մարդս կարողանար ապրել։ Մեր կատարած հնագիտական խուզարկութիւնները միանգամայն հերքում են այդ կարծիքը,—ասում է Ա. Իվանօվսկի,—Աւազային լերան կաւախառն խաւերում և Կուրու-խարաբում պահպանուել են արհեստական այրեր, որոնք, մի քանի նշաններին նայելով, ծառայում էին նախապատմական մարդու համար իբրև բնակարան։ Թէ Կեօքչայի ափերը տեսել են քարի շրջանի (каменнаго періода) մարդուն, դրա ապացոյցներն են գեղեցիկ կերպով աբսիդա քարից շինած քերիչնիր և ուրիշ քարէ գործիքներ, որոնք մեծ քանակութեամբ գտնվում են (Ելենօվայի և Օրդակլուի մէջ) լճի արևմտեան եզերքում։ Բևեռագիր արձանագրութիւնները, պահպանուած նոյն լճի ափերին Օրդակլու, Կեօլանը-Ղըրլան և Ջախալու գիւղերի մօտ, վկայում են, թէ IX և VIII դարերում Քրիստոսից առաջ այստեղ հասել են Վանի աշխարհակալները և գոյութիւն է ունեցել վանեան կուլտուրա։ Ջանգի մօտ, ինչպէս վերը յիշեցինք, բնակեցուած էր Արաբիայից զէնգերի գաղթականութիւնը։ Լճի հարաւային ափերում Գիւզալ-Դարա գիւ-

ղում իմ կատարած հին գերեզմանների պեղումները համոզեցին ինձ, թէ այստեղ ապրելիս է եղել նոյնպէս բրօնզէ շրջանի մարդը, տձև, երկարագլուխ գանգով, որի պատկանելն այս կամ այն ցեղին վիճելի է տակաւին մարդաբանութեան մէջ։ Հայոց գիւղերը գոյութիւն ունէին Կեօքչայի ափերում ամենահին ժամանակներից, և այդ մասին վկայում են (Այրի վանք, Նորատուս ստորին Ատեամանում) վանքերի աւերակները և բազմաթիւ հին-հայոց գերեզմանատները։ Սևան կղզու վրայ ապրում էին քրիստոնէութեան առաջին դարերից։ Առհասարակ պէս-պէս հընագիտական վկայութիւնները ակնարկում են այն բանի վրայ, թէ Կեօքչայի ափերում երբեմն աւելի կուլտուրական կեանք կար, քան թէ այժմ։

Գալով Ելենովկա Ա. Իվանովսկի շտապում է դէպի Թիւրքական Օրդակլու գիւղը, ուր եղած բևեռագիր արձանագրութիւնը ընդօրինակում է էստամպաժով և հանում է լուսանկարը (արդէն հրատարակուած է. տես «Матеріалы по археологіи Кавказа вып. V», էջ 106—110)։ «Առաջ խաղալով Օրդակլուից դէպի հարաւ,—շարունակում է ռուս ճանապարհորդը,—ես ճանապարհին այցելեցի Այրի վանքը, որ վաղուց լքուած է և բոյն է դարձել աւազակների համար (Նկար № 1. էջ 17)։ Վանքի մօտ շատ փոսեր կան, որոնց մի քանիսը բաց են, միւսները քարով ծածկուած, և ակնարկում են ստորերկրեայ անցքերի գոյութեան մասին։ Այդպիսի մի փոսի մէջ երկու սաժէն խորութեամբ՝ ես չուանով իջայ, և առջևս բացուեց նեղլիկ, ցածր և երկար նրբանցք, որի ծայրում լոյս էր երևում։ Նրբանցքի երկու կողմից շինուած են մի շարք փոքր այրեր, որոնք, ըստ երևոյթին, ճգնաւորների խուցեր պիտի լինեն։ Նրբանցքի և խցերի պատերը զարդարուած են խաչանշաններով։ Նրբացքը հասցրեց ինձ մինչև փոքրիկ հրապարակը լճի ափին։ Հրապարակի վրայ բարձրանում էր բարձր, ուղղահայեաց մի ժայռ, և ես ճանապարհ որոնելով մի կերպ վերև ելնելու նպատակով ժայռի մէջ նկատեցի ոչ-մեծ ծակ, քարերով ծածկած։ Դես ու դէն հրելով քարերը, ես մտայ անցքի մէջ, որ տանում էր դէպի վերև և այնքան անձուկ էր, որ մէջը կարելի էր միայն սողալով առաջ գնալ։ Քսան սաժէն սողալով խորին մթութեան մէջ, ես հանդիպեցի սալաքարի, որ մի կողմ մղելով՝ զարմանքով ինձ գտայ եկեղեցու մէջ, աջ կողմում (Նկար № 2)։ Ակներև էր, որ դա գաղտնի անցք էր, յարձակման միջոցին փախչելու համար»։ Ճանապարհին՝ Այրի վանքից դէպի Նորատուս,

Ա. Իվանովսկի տեսել է երկու դամբարաններ, քանդակներով նրանց վրայ (տե՛ս նկար № 3 և № 4). Նորատուսում ուշադրութեան արժանի են տաճարի աւերակները (նկար № 5) և հին հայոց գերեզմանատունը լի խաչքարերով (նկար № 6)։ Նորատուսից ճանապարհորդը ժամանել է Նոր-Բայազէտ քաղաքը (նկար № 7), ուր բնակվում են Թիւրքական Բայազիդից գաղթած հայեր։ Նա պատմում է իր ստացած տպաւորութիւնները, նկարագրում է տների շինութիւնը նահապետական ձևով, քարի գործածութիւնը, փայտի պակասութիւնը անտառների բացակայութեան շնորհիւ։ Նոր-Բայազէտի և Ատեամանի մէջ, լճի ափին ճանապարհորդը առաջին անգամ հանդիպում է հարիւրի չափ գերեզմանաթմբերի։ Գերեզմաններից նրա ուշադրութիւնն են գրաւել 8 հատը Կուրու-Խարաբայում, որոնք յիշեցնում էին նրան Մօնղոլիայում (Միջին Ասիա) տեսածները։

Կուրու-Խարաբայից նա գալիս է Ստորին Ատեաման, որի վերջում բարձրանում են հին տաճարի աւերակները (նկար № 8) և հին հայոց գերեզմանատունը։ «Առ հասարակ,—նկատում է Ա. Իվանովսկի,—լճի հարաւային եզերքում, սկսեալ Ատեամանից մինչև Զող, չկայ մի գիւղ, ուր չլինէր հին հայոց գերեզմանատուն, զանազան տապանաքարերով, զարդարուած նրբագոյն և գեղեցիկ քանդակներով (նկար № 9), որոնք անգթօրէն աւերվում են ու յափշտակվում, մնալով առանց որևէ հսկողութեան։ Յաճախակի հանդիպում էի գեղեցիկ խաչարձանների, որոնք, ձգուած՝ լեռնային առուակների վրայ, ծառայում էին անցորդներին իբրև կամուրջ, կամ գործ էին ածվում իբրև շինութեան նիւթ (№ 11)։ Իմ գլխաւոր նպատակս էր՝ լճի հարաւային ափերում հանել Ալուչալու գիւղի ամենամեծ բևեռագիր արձանագրութեան նկարը,—ասում է Ա. Իվանովսկի,—որ մինչև վերջին ժամանակներս անմատչելի էր՝ դէպի ջուրը թեքուած բարձր ժայռի վրայ փորագրուած լինելու պատճառով։ «Այդ արձանագրութիւնը,—գրում է պ. Մ. Վ. Նիկոլսկի (տե՛ս «Матеріалы по археологіи Кавказа по V», стр. 120—121),—յայտնի է տակաւին 1862 թուականից, Մեսրոպ արքեպիսկոպոսի հանած օրինակից, որ հրատարակուեց Մոսկվայում «Համբաւաբեր Ռուսիոյ» թերթում»։ Պրոֆ. Սէյսը Մոսկվայի Հնագիտական Ընկերութեան նամակում յոյս է յայտնում, թէ ռուս գիտութիւնը արշաւանք կը կազմակերպէ այս արձանագրութիւնը

հետազօտելու և նրանից նկար հանելու։ 1889 թ. գերմանացի գիտնական Վալդեմար Բելկ երեք ժամ ջրի մէջ կանգնած՝ հագիւ կարողացաւ 19 տողերից միայն 3-ը ընդօրինակել»։ «Իմ նախորդների արած փորձերը այդ ուղղութեամբ յուսահատական եղեցան ինձ համար»,—վկայում է Ա. Իվանօվսկի, բայց այնուամենայնիւ ինքն էլ կրկնում է նոյնը։ Թէ ինչպիսի դըժուարութեամբ է գլուխ բերում այդ գործը պարոնը, երեւում է նրա հետեւեալ նկարագրութիւնից. «Ժայռը արձանագրութեամբ հանդերձ դարձած է լճի կողմը (Նկար № 12). վերջին տողերը արձանագրութեան՝ երկու սաժէն բարձր են ջրի մակերեւոյթից, ուրեմն անմիջապէս մօտենալ նրան անկարելի էր. երկար մտածելուց յետոյ, վճռեցի մերձաւոր Կեօլանը-Ղըրլան գիւղից բերել տալ երկանիւ մի սայլ երկու գոմէշ լծած և, նստացնելով նրա մէջ հայ կառապաններին, պատուիրեցի քշել ջրի միջով դէպի ժայռը. երկար ժամանակ գոմէշներին դժուար էր ստիպել լողալ ուր հարկն էր. բայց վերջապէս ահա սայլը կանգնեց ժայռի տակ. սայլի վրայ կանգնեցրին մի սեղան, սեղանի վրայ՝ նստարան, նստարանի վրայ՝ մի աթոռ, դրա վրայ՝ մի փոքրիկ նստարան, և այս բոլորը ամուր կապելով չուաններով՝ ես ելայ դրանց կատարը։ Արձանագրութիւնը իմ առաջ էր. շուտով կտաւեայ կտամպաժը յարմարեցնելով ժայռի երեսին՝ ձեռնամուխ եղայ գործին, որ մի քանի ժամուայ աշխատութիւնից յետոյ վերջանալու վրայ էր, երբ անակնկալ քամին յանկարծ պոկեց կտաւի մի ծայրը ժայռից, և ես, մի րոպէ մոռանալով վտանգաւոր դիրքս, ձեռքս ձգեցի որ բռնեմ, կորցրի հաւասարակշռութիւնս ու ընկայ լճի մէջ։ Ամբողջ օրուայ աշխատանքս ի զուր կորաւ այս կերպով։ Միւս օրը ամեն բան նորից սկսեցի և աջողութեամբ ու անվթար հանեցի արձանագրութիւնը, որ, ըստ վերծանութեանը պ. Նիկօլսկիի, պատկանում է ոչ թէ Սարդուրի II-ին, ինչպէս կարծում էին Սէյսը և Վ. Բելկը, այլ Ռուզա I-ին, որ ժամանակակից էր Ասորեստանեայց Սարգօն (722—705 թ. նախ քան Քրիստոս) թագաւորի։ Յիսուն սաժէն հեռու արձանագրութեան ժայռից՝ դեռ երեւում են մի ամրոցի հետքերը, չորս կողմից պատած պարիսպներով, որոնք ներկայումս բոլորովին համարեա քանդուած են. պարիսպների երկայնութիւնը 62 սաժէն է, լայնութիւնը՝ 18. ամրոցը միջից բաժանուած է պատերով զանազան սենեակների։ Այս ամրոցը յիշեցնում է Արարատի ստորոտում

եղած ամրութիւնները, որոնցից մէկում կատարուեցին պեղումներ։

«Գեօզալ-դարա գիւղի շրջակայքում, ուր ես իջևանել էի վերոյիշեալ արձանագրութիւնը ընդօրինակելու ժամանակ, կան 17 գերեզմաններ, քարերով ծածկած և վերևից սալաքար դրած»։ Դրանցից հինգը Ա. Իվանովսկի քանդելով գտել է կմախք՝ նստած դրութեան մէջ՝ քարէ արկղում, ծնկները ծալած մարմնին և երեսը դարձրած դէպի արևելք։ «Գանգը՝ արհեստական կերպով ձևացուած, դժբախտաբար քայքայուած էր,—ասում է պարոնը։—Դա առաջին անգամն է գտնուած այս տեսակ ձև գանգ։ Գլխի մօտ կային երկու խեցեղէն պտուկներ, ոտքի մօտ՝ երեք հատ աւելի մեծերը։ Կմախքի կողքին գտնուեցին բրօնզէ չորս իրեր՝ դաշոյն, դանակ, ասեղ և ունելիք»։ Միւս չորս գերեզմաններում կմախքների դրութիւնը նոյնն է եղել, բայց ոչ ձևը։ Գեօզալ-դարայից մեր ճանապարհորդը անցնելով Ջախալու գիւղը՝ ընդօրինակում է մի այլ բևեռագիր արձանագրութիւն (նկար № 15), ուր, համաձայն պ. Նիկոլսկիի վերծանութեան, առաջին անգամ հանդիպում է «Ուրարտու» անունը։ Յետոյ Ա. Իվանովսկի ժամանում է Ջող. ճանապարհին հնագիտական տեսակէտից ուշադրութեան արժանի մի բան չպատահելով՝ գալիս անցնում է լճի արևելեան եզերքը, որ մռայլ պատկեր է ներկայացնում, զուրկ՝ ճանապարհից և հարուստ լերկ ժայռերով և բարձրաբերձ լեռներով, տասն-հազարից աւելի ոտնաչափ բարձրութեամբ։ Երբեմն ամբողջ օր առաջ շարժուելով ռուս գիտնականը չէ պատահում ոչ մի կենդանի շնչի կամ մարդու, բացի երկու կամ երեք վրաններից՝ վայրենի անկիւններում, ուր Թուրք աւազակները ապաստան են գտնում իշխանութեան հետապնդումներից։ Նա շատ ուրախ է, որ վերջապէս հասնում է Նադեժդինօ ռուս գիւղը, որ Սևանայ լճի ափին է ընկած, Ատ.-Թեփէ թերակղզու ետևում. գիւղը հիմնուած է 1851 թ. մօլօկանների ձեռքով, որոնք գաղթել են տեղս Սամարայի նահանգից։ Մի ժամանակ այստեղ հայեր էին բնակվում, որոնցից յիշատակ են մնացել երկու մատուռներ. մէկը՝ լեռան ստորոտումն է, միւսը՝ համարեա նրա կատարում։ Հետազօտելով թերակղզին, Ա. Իվանովսկի գտնում է 150 սաժէնի չափ մի մեծ պարիսպ, կիսաբոլոր, վայրենի քարերից շարած, որ շեշտակի իջնում է դէպի լիճը։ Պարիսպով պատած տարածութեան մէջ, բնակիչների ասելով, յաճախ գտնվում են երկաթէ

ոլաքներ ու նետեր։ Նադեժդինոյից նա գնում է Զուբուխը. արձանագրութիւն չէ գտնում, նստում է նաւակ, գննում է լճի հարաւային ափերը, դարձեալ անհետեւանք. վերջապէս դիմում է Սեւանայ կղզին, վանքը դիտելու համար։ (Հետեւում է վանքի նկարագրութիւնը, Աստուածածնի և Առաքելոց տաճարների և այլն)։

Մ. ՇՈՎՐԵԱՆ

(Վերջը միւս անգամ)

## ՆՈՐ ՍՏԱՑՈՒԱԾ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

1) Զրոյցներ, *Վ. Փափազեանի, Շուշի, 1911 թ., էջ 228, գ. 50 կ.։*
2) Երուանդ Գօշ, *Կարա-Դարվիշի, Թիֆլիս, 1911 թ., էջ 150, գ. 50 կ.։*
3) Պառաւաշունչ (*Ջաւախքի հէքիաթներից*), *գրի առաւ Ե. Լալայեան, Ալէքսանդրօպօլ, 1911 թ., էջ 27, գ. 10 կ.։*
4) Բէն-Հուր, *վէպ քրիստոնէական առաջին օրերից,* Lewis Wallace-*ի, թարգմ. Տիրայր վարդապետի, Թիֆլիս, 1911 թ., էջ 415, գ. 1 ր.։*
5) Խոստովանութիւնը, *Լ. Ն. Տօլստօյի, թարգմ. Սուլխաթեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 133, գ. 30 կ.։*
6) I. Թանգ արժէ, II. Կարմա, III. Այդ դու ես, IV. Մտքեր, *Լեվ Տօլստօյի, թարգմ. ռուսերէնից, հրատարակ. Յ. Յ. Շ.-ի, Սամարղանդ, 1911 թ., էջ 50, գ. 15 կ.։*
7) Եապօնական Հէքիաթներ, *թարգմ. Գր. Շահբուդաղեանի, Թիֆլիս, 1910 թ., էջ 54, գ. 25 կ.։*
8) Մարուող ճրագներ (*պիէս 3 արար.*), *Ալ. Աբէլեանի, Նոր-Նախիջևան, 1911 թ., էջ 59, գ. 60 կ.։*
9) Ճիւաղը, *Ատրպետի, Թիֆլիս, 1911 թ., էջ 42, գ. 15 կ.։*
10) Խաչատուր Աբովեան (*պատմա-գրական վերլուծութիւն*), *Թագ. Աւդալբէգեանի, Վաղարշապատ, 1910 թ., էջ 58, գ. 15 կ.։*
11) Խաչատուր Աբովեան, *Ներսէս ք. Տէր-Կարապետեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 285, գ. 75 կ.։*
12) Պատմութիւն Նահանգի Սիսական, *արարեալ Ստեփաննոսի Օրբէլեան արքեպիսկոպոսի Սիւնեաց, Թիֆլիս, 1911 թ., էջ 618, գ. 50 կ.։*
13) Անդրկովկասի հողային պայմանները (*պատմա-տնտեսական փորձ*), *Հ. Մուսայէլեանի, Վաղարշապատ, 1910 թ., էջ 74, գ. 20 կ.։*
14) Գիւղատնտեսական տեղեկատու, I *մաս (երկրագործութիւն, խոտաբուծութիւն, պարտիզպանութիւն, անասնապահութիւն, կաթնատնտեսութիւն և մեղուաբուծութիւն), պատկերազարդ, Թիֆլիս, 1911 թ., էջ 104, գ. 30 կ.։*

15) Սերմնացուներու ընտրութենէն սպասուած օգուտները, *Միք. Նաթանեանի, Կ. Պոլիս, 1911 թ., էջ 22, գ. 1 ղրուշ։*

16) Հայրեր եւ զաւակնե , *պատկերազարդ, պրոֆ. Վ. Մ. Շիմկեվիչի, թարգմ. Վահ. Մամիկոնեանի, Մոսկվա, 1911 թ., էջ 53, գ. 50 կ.։*

17) Ирригація Эчміадзинскихъ земель (Эрив. губ.), Каптажъ подземныхъ водъ, *Գր. Աղաբաբեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 20.*

18) Труды перваго кавказскаго съѣзда сельскихъ хозяевъ 15—24 ноябр. 1909 г. въ Тифлисѣ. *Թիֆլիս, 1911 թ , էջ 430.*

19) Երկիւղն ու անվեհերութիւնն սկզբնական դաստիարակութեան ժամանակ, *Կապտերեվի, փոխադր. Մ. Ասիլեանցի, մասն II, Թիֆլիս, 1911 թ., էջ 33—64, ձրի յաւելուած «Հասկեր» ամսագրի։*

20) Քնած դշխուհին եւ եօթ քաջերը *(հէքիաթ), Ա. Պուշկինի, փոխադր. Ա. Խնկոյեանի, պատկերազարդ, Թիֆլիս, 1911 թ., էջ 30, ձրի յաւելուած «Հասկեր» ամսագրի։*

21) Գիր եւ կեանք, *դասագիրք հայոց լեզուի, Յովհ. Մալխասեանցի և Նար-Դոսի, Թիֆլիս, 1911 թ., էջ 624, գ. 1ր. 25 կ.։*

22) Աղբիւր *մանկական ամսագրի № № 5—6-ը (մայիս-յունիս) նուիրուած Ղ. Աղայեանի յիշատակին, Թիֆլիս, 1911 թ.։*

23—24) Հասկեր *մանկական ամսագրի № № 4-ը (ապրիլ) և 5 ը (մայիս), Թիֆլիս, 1911 թ.։*

25) Մարմնամարզ, *պատկերազարդ ամսաթերթի № 3-ը (ապրիլ), Կ. Պոլիս, 1911 թ.։*

26) Աստղիկ, *գրական, գեղարուեստական, ընկերական կիսամսեայ հանդէս, № 1 (1 փետր. 1911 թ.), Վենետիկ, իւրաքանչիւր №-ը արժէ 12 կ.։*

27) Արարատ *ամսագրի № 3-ը (մարտ), 1911 էջմիածին թ.։*

28) Տեղեկագիր *Կովկ. Հայոց Բարեգ. Ընկ. 1910 թ. գործունէութեան, Թիֆլիս, 1911 թ., էջ 117+28*

29) Հաշիւ գանձանակադրամոց *ժողովելոց ի ս. Կաթուղիկէ Աստուածածնայ յեկեղեցւոջն Երեւան քաղաքի յօգուտ էջմիածնի, յընթացս 1896—1909 թ., կազմեց Աբգար Ստ. Գուլամիրեան, Երևան, 1910 թ., էջ 12.*

30) «Գուտտենբերգ» գրախանութի հայերէն գրքերի գրացուցակը, *Թիֆլիս, 1911 թ., էջ 127.*

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

«Արօր» ամսագրի ապրիլեան (№ 4) համարում տպուած իմ յօդուածը, «Ճտրիկներ» վերնագրով, առիթ տուեց Լէօին հանդէս գալ «Հօրիզօնում» (№ № 103, 105) մի պաշտպանողական մեծ յօդուածով «Արօրի» աշխատակիցների և նաև իմ՝ Կալիասսի դէմ։ Թէպէտև Լէօն իր յօդուածի համար արժանաւոր պատասխան ստացաւ «Մշակից» (№ № 103, 105), սակայն ես ևս իմ այս նամակով, ուղղուած՝ «Արօրի» խմբագրութեան, կամենում եմ «Արօրի» ընթերցողներին ցոյց տալ, թէ ինչպիսի գրական հակառակորդ է ներկայանում Լէօն, երբ մերկացնում են նրա գրական հասարակական արարքները և այն հակասական գալարումները, որոնցով պսակեց նա վերջին տարիները իր գործունէութեան շրջանը։ Ինչպէս երևում է, 25-ամեայ գրական գործունէութիւնը շատ բան է սովորեցրել Լէօին՝ բացի գրական վայելչականութիւնից և բանակռիւ մղելու շնորհքից։

Եթէ Կալիասի և այլոց գրածները Լէօի մասին արժանի են այն հայհոյանքներին, որոնց նա առատօրէն թափում է իր հարուստ գրական շտեմարանից, աւելի լաւ չէ՞ր լինի, ինչպէս վայել է ամեն մի կօրրէկտ հակառակորդի, նախ «Հօրիզօնի» էջերում առաջ բերել Կալիասի և այլոց գրածները չակերտների մէջ, որ և շատ իրաւացիօրէն շեշտուած է «Մշակում» (№ 103), որպէս զի «Հօրիզօնի» ընթերցողը ինքը դատէր և տեսնէր, թէ որտեղ է «գարշանքը շարժող քաջագործութիւնը», որ «պիտի կատարէին աներես, աւելի ցինիկ կերպով» և այլն և այլն։ Սակայն Լէօն այդ քաջութիւնը չունեցաւ և երբէք չի ունենայ։

Լէօն «Հօրիզօնի» ընթերցողի առաջ համաշխարհային չէմպիօն-ըմբշամարտին սազող ուժգնութեամբ կարկտի նման կատաղօրէն թափում է իր հայհոյանքները, ապացուցելով որ այդ տեսակ մարզանքների մէջ նա շատ վարժ է, որին ապացոյց նաև կարող են լինել նրա «Ռուսահայոց գրականութիւն» աշխատութիւնը և «Մշակում» տպուած այն յօդուածները, ո-

րոնց մէջ նա իր այժմեան ընկեր Շիրվանին, մեր Թումանին и Ko. լիուլի պարգևատրել է իր այդ շնորհքի պտուղներից։ Լէօն հայհոյանքներին հետ միասին զուգընթացաբար խրատներ է կարդում, թէ ինչ տեսակ պէտք է լինի գրական գործիչը կամ ժուռնալիստը և այլն, միանգամայն յիշեցնելով այն գողին, որ վազելիս ինքն էլ գոռում է՝ թէ «բռնեցէք գողին»։ Խրատող և քննադատող գրողը դեռ ինքը պէտք է զերծ լինի այն արատներից, որոնց դէմ նա քարոզում է, մինչդեռ Լէօն իր վերոյիշեալ հայհոյական յօդուածով բոլորովին հակառակը ցոյց տուեց։

Մեր անուանի, յոբելեաններ ունեցող գրական գործիչները և հասարակական այլ ասպարէզների վրայ գործող նշանաւոր անձինք, երբ հարկաւոր են համարել գրական բանակռիւ մղել, գործ են ածել այնպիսի լեզու, որ մնում է միայն աչքերը փակել, ականջները ծածկել ու դէն ձգել լրագիրը…

Ո՞վ չէ յիշում անցեալում և ներկայում մղուած Աղայեան-Մանդինեանի, Մանդինեան-Մալխասեանցի, Լէօ-Շիրվանզադէի և շատ շատերի լրագրական բանակռիւները։ Լէօն «Արօրի» աշխատակիցների դէմ ուղղած իր յօդուածներով մի նոր պսակ հիւսեց, քիչ համարելով այն, ինչ որ հիւսուել է իր և վերոյիշեալ անձանց կողմից մինչև օրս բանակռուի ասպարէզի վրայ։

Բարի ախորժակ, Լէօ, միայն երբէք չմոռանաք և միշտ յիշեցէք գրական շանտաժի թռուցիկը…

ԿԱԼԽԱՍ

Խմբագիր-հրատարակիչ Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

Տպարան «Է Պ Օ Խ Ա», Դաւօվսկայա № 3.

## «ԱՐՕՐԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ ԾԱԽՎՈՒՄ ԵՆ

*Հ. Առաքելեանի ինքնուրոյն եւ թարգմանական աշխատութիւնները եւ «Մեսրոպեան Հանրամատչելի Գրադարանի» հրատարակութիւնները.*

1. Անդերսենի Հեքիաթները, *թարգմ. Տ. Զաւէնի, գ.* — 50 կ.
2. Արբեցողութեան դէմ, *բրօշիւր, գինը* . . — 15 կ.
3. Հայկական Տպագրութիւն, *Լէօի, գ.* . . 1 ր. 20 կ.
4. Ջհուդ-Քուշան, *Շահրիարի, մեծ վէպ Պարսկաստանի կեանքից, գ.* . . . 1 ր. —
5. Ուրանիա, *աստղագիտական մեծ վէպ Ֆլամմարիօնի, թարգման. Հ. Առաքելեանի, գ.* . 1 ր. 50 կ.
6. Քսան Վէպիկներ, *Գի դը Մօպասանի, թարգմ. Հ. Առաքելեանի, գ.* . . . . 1 ր. —
7. Անգլիայի հասար. եւ քաղաքական կեանքը, *գ.* — 15 կ.
8. Հասարակութեան Նեցուկները, *դրամա Հ. Իբսէնի (պատկերով), թարգմ. Լ. Բարայեանի* . — 50 կ.
9. Դէպի Արարատ, *Արշ. Մխիթարեանի, գ.* . — 40 կ.
10. Մի ամիս Արեւելքում, *Հ. Առաքելեանի, գ.* . — 40 կ.
11. Նոր Կեանքի Շեմքում, *դրամատ. էտիւդ Ա. Ք.* — 40 կ.
12. Միլտոնի կեանքը, *կազմեց Հ. Առաքելեան, գ.* . — 25 կ.
13. Գալիլէյի կեանքը, *կազմեց Հ. Ա., գ.* . . — 25 կ.
14. Ձեռնարկ *Տրամաբ., Հոգեբ., Բանահիւսութեան, կազմեց Հ. Առաքելեան, գինը.* . . — 50 կ.
15. Տասն-երկու Պատմուածքներ, *Շահրիարի, գինը.* — 50 կ.

*Բոլոր 15 գրքերը միասին գնողներին կը լինի 25°/o զիջում*

ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

ՆԵՐԿԱՅ 1911 ԹՈՒԱԿԱՆԻ

II ՏԱՐԻ „ԱՐՕՐ" II ՏԱՐԻ

# „ԱՐՕՐ"

ԸՆԴՀԱՆՈՒՐ-ԳՐԱԿԱՆ, ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ, ԳԻՏԱԿԱՆ, ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԵՒ ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ

Ա Մ Ս Ա Գ Ր Ի

*«ԱՐՕՐԸ» հրատարակվում է Թիֆլիսում խմբագրութեամբ Հ. Առաքելեանի և աշխատակցութեամբ ռուսահայ, թիւրքահայ և պարսկահայ գրողների։*

*«ԱՐՕՐԻՆ» աշխատակցում են՝*

*Աթանասեան Ա., Այվազեան Ղ., բժշկ. Աղասարեան Բ., Ատրուշան, բժշկ. Արծրունի Վ., Առաքելեան Արշակ, Ա. Թաբէգեան Մ., Բաբգէն եպիսկոպոս Կիւլէսէրեան, Բաշալեան Լևոն, Բաշինջաղեան Գ., Բաբայեան Խ., Գասպարեան Յարութիւն, դոկտոր Գրէնֆիլդ Ջէմս, Դանիէլեան Լ., Դը-Գուբերնատիս Անջելօ (սենատօր, իտալական պրոֆէսօր), Եզեկեան Ա., Եսայեան Զ., Էմմանուէլ ք. Նազարեան, Թէքէեան Վ., բժշկ. Թիրեաքեան Յարութիւն խան, Խանազատ Ռ., Խուրշիդ, Կալֆաս, Կրասիլնիկեան Կ., Ղուկեան Ա., Մալխասեան Ս., Մալխազեան Ա., Մակլէր Ֆ. (ֆրանսիացի հայագէտ), Մեսրոպ ք. Մելեան, Յարութիւնեան Ի., Նաթանեան Միք., Նազարէթեան Ա., Նամալեան, բժշկ. Շահբազեան Ա., բժշկ. Շիւեան Ա., Շահրիար, Չալխուշեան Գ., Չախմախչաղեան Յ., Սարուխան Ա., Սուրխաթեան, Սամուէլեան Խ., Սպենդիարեան Յ., պրոֆէսոր Վեսելովսկի Ի., Տէր-Մինասեան Ե., Ռօրբախ Պա., Քալանթար Ա.։*

*«Արօրի» բաժանորդագինն է «Մշակի» բաժանորդների համար 4 ր.։ Ոչ-բաժանորդները վճարում են 2 ր. աւելի։*

*Դրամ և թղթակցութիւն ուղարկել այս հասցէով՝*

Тифлисъ, редакція журнала „АРОР".

Tiflis, Rédaction de la revue arménienne «Aror».

*Թիֆլիս, «Արօր» ամսագրի խմբագրութիւն*

Խմբագիր-Հրատարակիչ՝ Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

# ԱՐՕՐ

## ՄԻԱՄՍԵԱՅ ՀԱՆԴԷՍ

ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՐԱԿԱՆ, ԳԻՏԱԿԱՆ-ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՒ ԽՆԱՄԱՏԱՐԱԿԱՆ.

II ՏԱՐԻ II ՏԱՐԻ

ՅՈՒԼԻՍ-ՕԳՈՍՏՈՍ

№ 7—8

1911

ԹԻՖԼԻՍ




# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# Ա Զ Դ

«Արօրի» անցեալ համարի (№ 5—6) յաւելուածի բաժնում կազմարարական մի սխալ է տեղի ունեցել։

Յաւելուածի 257—264-դ երեսները բաժանորդներից ոմանց ուղարկուած համարների մէջ մտցուած են կրկնակի, իսկ դրա փոխարէն պակասում են նոյն յաւելուածի 265—272-դ երեսները։

Ուստի խնդրվում է այն բաժանորդներին, որոնց ստացած «Արօրի» № 5—6-ի յաւելուածում յիշեալ էջերը պակասում են, մի բաց նամակով յայտնել խմբագրութեանս, որպէս զի պակասած էջերը «Արօրի» առաջիկայ № 9-ի հետ միասին ուղարկենք։

Խմբագրութիւն

Գրական ԳԻՏԱԿԱՆ Հասարակական-ՔԱՂԱՔԱԿԱՆ խաղաղասէր. ՀԱՆԴԷՍ

# ԱՐՕՐ

ԵՐԿՐՈՐԴ տարի
ԹԻՖԼԻՍ
1911 Թ.
ՅՈՒԼԻՍ-ՕԳՈՍ.
№ 7—8

# ԺՈՐԺ ԴԸ ՊԱՐԻ

---

Հազիւ տասն տարեկան մի տղայ, ըստ երևոյթին գիւղից նոր եկած, ճաշ էր տանում իր տիրոջը՝ ուստա-Գիքօյի համար, որ յայտնի էր Թիֆլիսում իբրև հմուտ դուրգար։ Ձախ ձեռքը անց էր կացրել կեղտոտ անձեռոցիկի կապած ծայրերի արանքով, որի մէջ դրուած էր կաւէ ամանով ինչ-որ տաք հեղուկ և մի հատ էլ թոնրի հաց, իսկ աջ ձեռքը յամենայն դէպս ազատ էր պահում։ Տանում էր կերակուրը և մտածում, որ իր համար էլ լաւ բաժին կը մնայ, որովհետև աղջիկ-պարոնը լցրել էր ամանը։ Ճանապարհին նա նկատեց իր հասակակից երեխաների, որոնք աշխատում էին թռչկոտելով հասնել կարմիր լաթի մի կտորի, որ կախուած էր ծառի ճիւղից։

Կանգ առաւ այդտեղ Մոսօն և ներողամտաբար ժպտաց Թիֆլիսեցի տղերանց անշնորհքութեան վրայ։

—Ի՞նչ կայ, հալաբըրեցի-տըրաբախեցի, ի՞նչ ես ծաղրում,—խօսեց մէկը.—ինքդ կարո՞ղ ես հասնել։

—Ուզո՞ւմ ես գրազ գանք,—պատասխանեց Մոսօն,—երկու կօպէկ իմը, մէկը քոնը։

—Ի՞նչ գրազի բան կայ, թէ շնորհք ունես, հասիր.

ցած բեր...փողով ես ուզո՞ւմ զարմացնել. էսօր մի շա՜տ փող եմ խարջել։

Մոսոյի ինքնասիրութիւնը շօշափված էր։ Նա առանց երկար մտածելու՝ լարեց իր ամբողջ ոյժը և թռչկոտեց, մեկնելով աջ ձեռքը դէպի կարմիր լաթը։

Երեխաները քրքիջ բարձրացրին։

—Հիմա ո՞նց ես, տրաքախ, — դիմեց մէկը.—էլի գրազ կը գա՞ս,

—Էլի գրազ եմ գալի, երկու կոպէկ իմը, մի կոպէկ քոնը,

Այս ասելով հանեց գրպանից իր երկու կոպէկանոցը, որ գիւղից բերած իր միակ հարստութիւնն էր։ Նա ուշադրութիւն չդարձրեց, որ թռչկոտելու միջոցին կերակուրի կէսը թափուեց անձեռոցիկի մէջ ու այնտեղից էլ անցաւ իր շորերի վրայ,

—Փողը ի՞նչ ոտներս է,—պատասխանեց արհամարհանքով խօսակիցը,—ուզում ես գրազ գանք մի-մի ապտակի վրայ,

—Շատ լաւ, մի-մի ապտակ, վկայ եղէք տղերք,—ասաց Մոսոն։

Կերակուրը դրեց գետնի վրայ, մի քանի քայլ հեռացաւ ու այնտեղից վազ տալով թռչկոտեց։ Թէպէտ գլորուեց գետնին, բայց կարմիր լաթը ձեռքին էր։

Երեխաները աղմուկ բարձրացնելով փախան գնացին։ Մոսոն շորերը թափ տալով մօտեցաւ կերակրին, բարկացաւ շան վրայ, որ լիզում էր թաց անձեռոցիկը, վերցրեց ու շարունակեց ճանապարհը։

Ալէքսանդրեան պարտէզի մօտով անցնելու միջոցին նրա ուշադրութիւնը գրաւեց մայթի վրայ նստած մի այլանդակ արարած, սարսափելի մեծ գլխով ու երեխայի ոտներով։ Նրա առջևը փռուած էր կապոյտ հին շորի կտոր, որի վրայ դրուած էր մի հատ կոպէկանոց։

Մոսոն կանգ առաւ ու սկսեց դիտել։ Մուրացկանը ապշած նայում էր անտարբեր։ Նրա նիհար մարմինը

դժուարանում էր պահել իր ուսերի վրայ վիթխարի գլուխը։ Երեխան հանեց իր երկու կօպէկանոցը, պտըտացրեց մի քանի անգամ ձեռքի մէջ, մօտեցրեց աչքերին, կարծես ուզում էր թուականը կարդալ, և վերջը գցելով մուրացկանի առջև՝ վերցրեց նրա կօպէկանոցը։

*
* *

Մոսօն նստած էր մի հին տան պատի տակ ու արցունք թափում։ Ուստա-Գիքօն ծեծել ու վռնտել էր նրան, ուշանալուն և կերակուրը վիթելուն համար։ Խեղճ երեխան առաւօտից բան չկերած՝ յոյս ունէր ճաշին լաւ կշտանալու, բայց անիծեալ գրազը նրա գլխին անբախտութիւն բերեց։ Ո՞ւր գնար, ո՞ւմ դիմէր. ոչ ոքի չէր ճանաչում այդ ահագին, բազմամարդ քաղաքի մէջ։ Մէջքը կպցրել էր պատին, գլուխը թեքել կրծքին ու թաց աչքերը երկու ձեռքով տրորելով մրոտել էր դէմքը։ Անց ու դարձ անող մարդկանց համար այդ տեսարանը սովորական բան էր, ուստի ոչ ոք ուշադրութիւն չէր դարձնում նրա վրայ։ Յանկարծ երևաց ոստիկանը, որ դանդաղ քայլերով մօտեցաւ երեխային և, կարծես գործ կատարած լինելու համար, ոտով բոթեց նրան ու հրամայեց գնալ-կորչել այդտեղից։

Մոսօն անսպասելի հարուածից ցնցուեց։ Թէպէտ ցաւը զգալի չէր, բայց սաստիկ վախեցաւ։ Անմիջապէս վեր թռաւ տեղից ու գնաց որոնելու աւելի ապահով տեղ՝ ազատ լալու համար։ Թափառելով հասաւ Կուրի ափին, որտեղ աղբի կոյտեր էին դիզուած, որոնց շուրջը պտտվում էին կեղտոտ խոզեր։ Նստեց այնտեղ մի քարի վրայ ու շարունակեց լալ։ Այժմ յոյս ունէր, որ ոչ ոք իրան չի խանգարելու։

— Ո՞վ ես, լակոտ, — հարցրեց կոպիտ ձայնով մի մարդ, որ կարծես գետնից էր բուսել ու կանգնել երեխայի առաջ։

Նա սարսափահար վեր թռաւ տեղից ու աղերսալի

հայեացք ձգեց այդ մարդու երեսին։

—Ո՞րտեղացի ես,—այս անգամ մեղմօրէն հարցրեց նա.—ինչո՞ւ ես լաց լինում։

—Ուստէն ծեծեց,—պատասխանեց Մոսօն ու սկսեց սրտալի լալ, կարծես խօսակիցը իր հարազատը լինէր։ —Ծեծեց ու դուրս արեց։

—Ո՞րտեղացի ես։

—Սև-քար գիւղից։

—Ծնողներ ունե՞ս։

—Ունեմ... Մայրս խորթ է։

—Փող ունե՞ս։

—Ունեմ։

—Այդ լաւ է։ Ի՞նչքան է։

—Մի կօպէկ։

—Շատ չէ։

—Շատ էր, բայց կէսը մուրացկանին բաշխեցի։

—Կո՞ւշտ ես թէ՞ քաղցած։

—Քաղցած եմ։

—Ես էլ եմ քաղցած։ Ուրեմն գնանք, բայց մեր ճաշը ուշ կը լինի, գործի հանգամանքը այսպէս է։

Մարդը գնում էր առաջ, երկայն ոտները ուղտի նման շարժելով. երեխան վազ տալով հետևում էր նրան։

«Ժօրժ դը Պարի, Ժօրժ դը Պարի» կանչում էին նրան այս ու այն կողմից, բայց նա կարծես իր ուշադրութեանը չարժանացնելով ամբոխը՝ քայլում էր համարձակ, մի-մի անգամ ուղղելով իր ջարդուած ցիլինդրը։ Թեթև քամին խաղում էր նրա երկայն, մինչև ուսերը հասած մազերի հետ։

Մոսօն հետևում էր նրան, ունենալով իր սրտում մի տեսակ զգացմունք, որ նման էր երկիւղի և ուրախութեան, իրար հետ խառնուած։

Անցան մի քանի փողոցներ, դուրս եկան Ալէքսանդրեան պարտէզ, ուր առաջուայ նման նստած էր հրէշը

ու, կարծես խորասուզուած՝ մտքերի մէջ, դիտում էր հե-
ռուն։

Ժորժը մօտեցաւ նրան, որի առջևից հաւաքեց չորս-
հինգ հատ կօպէկանոցներ ու շարունակեց ճանապարհը։

Մոսօն ապշած մնաց։

—Ո՞ւր ես տանում, էյ,—բացագանչեց մի քանի
քայլ հեռու կանգնած ծաղկատար դէմքով մի առողջ ե-
րիտասարդ ու ընկաւ յափշտակողի ետևից։

—Սրիկայ,—ասաց Ժորժը, կանգնելով ու մէջքը
ուղղելով։

—Ո՞ւր ես տանում մեր փողերը։

—Գլուխդ կը ճղեմ, սրիկայ, տեսնո՞ւմ ես ձեռնա-
փայտս։ Դու տարիներով ես ապրում այդ Աստուծոյ
պատժի հաշուով։ Թող այսօր էլ այս քաղցած երեխան
ուտի նրա աշխատանքը։ Էլ ձայնդ չլսեմ, ապա թէ ոչ
հոգիդ կը հանեմ։

Ժորժը շարունակեց ճանապարհը՝ քայլերը աստի-
ճանաբար արագացնելով։ Մոսօն հևալով գնում էր նրա
քամակից, աշխատելով աչքից չկորցնել իր բարերարին։

Ցուտով մտան քաղաքի ամենախուլ ու կեղտոտ փո-
ղոցներից մէկը, որտեղ ապրում է չքաւոր դասակարգը։
Այնտեղ մի հին տան ներքնայարկում՝ մի հատ թօնրի
հաց առաւ Ժորժը մուրացկանի կօպէկներով ու տալով
Մոսօյին՝ խստութեամբ հրամայեց իսկոյն և եթ սկսել
ուտել։

Անցան կրկին մի քանի տնակներ և մտան մի գար-
շահոտ բակ, որի խորքում գտնվում էին մի շարք քա-
րուքանդ եղած ու սևացած մանր սենեակներ։ Այդ սե-
նեակներից մէկը Ժորժի բնակարանն էր, իսկ միւսները
այն աստիճան անպէտքացած էին, որ մուրացկաններն
անգամ չէին յանդգնում գլուխը կոխել։

—Կաց այստեղ,—հրամայեց Ժորժը Մոսօյին,—ու
հացդ կեր վերջացրու։ Ես գնում եմ հարկաւոր գործի,
կարելի է քիչ ուշանամ, դու մի վախենար, չեմ կորչե-

լու... որքան ուշանամ, այնքան օգուտ քեզ համար... Հը՛մ ռեխդ ինչո՞ւ ես ծռմռում, սենեակս չե՞ս հաւանում... Դու ուտում ես կշտանում, իսկ ես մինչև գիշերս քաղցած պէտք է մնամ... Կեր պրծիր ու սպասիր ինձ... Ուզում ես՝ քնիր, պառկիր որտեղ էլ քէփդ տայ։

Այս ասելով դուրս եկաւ սենեակից, դուռը կողպեց անհագին բանալիով ու գնաց-անյայտացաւ։

Երեխան մնաց միայնակ կիսախաւար սենեակի մէջ, որի միակ փոքրիկ լուսամուտը լրագրի ու շաքարի թըղթերով էր ծածկուած։ Ամբողջ հացը վերջացնելուց յետոյ, սկսեց մտածել իր դրութեան մասին։ Պաշարեց նրան անյայտութեան երկիւղը, և սկսեց լալ։

Սենեակում մի հատ բան չկար, որ պէտքական լինէր։ Այս ու այնտեղ թափուած էին կեղտոտ ցնցոտիներ, ալիւրի պատառոտած տոպրակներ, զանազան հանքերի քարերի մանր կոյտեր, դագանակներ, մի քանի հատ ճխլտուած ցիլինդրներ և այլն։ Անկիւնում դրուած էր հարիւր տեղից ծակուած կապերտի մէջ փաթաթուած հին վերմակ ու մութաքա՝ միանգամայն իւղոտած։

Սենեակի բոլոր պատերը ծածկուած էին զանազան արձանագրութիւններով, որոնք արուած էին կաւիճով ու ածուխով, նայած պատերի ֆոնին։

Եթէ Մոսօն գրագէտ լինէր, ապա կը կարդար՝

«Գրպանումս ունենալով տասն-հինգ մանէթ, մեկնեցի Թիֆլիսից դէպի Եւրոպա, ուր ճանապարհորդեցի վեց ամիս։ Երբ վերադարձայ տուն, մօտս մնացել էր միմիայն եօթանասուն կոպէկ։ Ճշմարիտ է, շատ չէ, բայց թող նա պարծենայ, ով աւելի զայրաթով ճանապարհորդի»։

«Մարդիկ կարծում են, թէ ես խելագար եմ, իսկ ես համոզուած եմ, որ նրանք են խելագար։ Ես ինչ ճարում եմ, ուտում եմ, աւելորդն էլ խեղճերին տալիս, իսկ Ռօտշիլդը գիշեր-ցերեկ մտածում է իր հարիւրաւոր միլիոնները կրկնապատկելու մասին, այն ինչ՝ կաթից

զատ բան չի կարողանում ուտել ողորմելին»։

«Քսան տարի շարունակ ընտիր լարախաղաց էի և առաջնակարգ ակրոբատ Գօթֆրուայի կրկէսում, հետեւապէս արտիստ էի, սակայն այդ տիտղոսը մարդիկ չուզեցին յատկացնել ինձ։ Ո՞րտեղ է արդարութիւնը»։

«Ձեմ թողնելու երկրի վրայ ոչ մի դիմանկար և ոչ ժառանգ»։

Եւ այլն և այլն։

***

Օրը մթնեց։ Երեխայի դրութիւնը կրկնապատիկ վատթարացաւ։ Երջանկութիւն կը լինէր նրա համար, եթէ մի կերպ կարողանար դուրս գալ այդ դժոխային սենեակից։ Դուռը կողպած էր, իսկ լուսամուտի երկաթէ վանդակները այնքան նեղ էին, որ անկարելի էր գլուխը անցկացնել։ Յուսահատութիւնը կատարեալ էր։ Ի սրտէ զղջում էր դուրգարի մօտ չվերադառնալուն և չաղերսելուն համար, որ նա ներէր։

Վերջապէս զգաց, որ մի բան էլ պէտք է անի, և չոքեց ու իր գիտցած կիսատ ու աղաւաղուած աղօթքները բոլորն ասաց, կրկնեց մի քանի անգամ։ Ծաւարը աստիճանաբար թանձրացաւ։ Մոսօն վեր կացաւ, կպցրեց ճակատն ու ձեռքերը դռներին, աչքերը պինդ փակեց ու ականջները սրեց։ Միմիայն հեռուից խուլ կերպով լսվում էին կառքերի ու ձիաքարշի ձայները։ Յանկարծ ուժգին թնդաց երեխայի սիրտը։ Ուղղակի դռան առաջ մի քանի հատ գամփռներ կռուեցին։ Նա աչքերը բաց արեց ու ամբողջ մարմնով պառկեց դռների վրայ։ Թէպէտ վախեցաւ շներից, բայց և շատ ուրախացաւ, որ այլ ևս միայնակ չէ։ Դարձեալ մի քանի րոպէ, և ահա հասաւ նրա ականջին ծանօթ քայլերի ձայնը։

Ժօրժը եկաւ։ Դուռը բացուելուն պէս Մոսօն դուրս պրծաւ, թագուն խոհանոց ներս մտած կատուի նման։

—Կաց, կերակուր եմ բերել, էյ, անունդ ի՞նչպէս է։

Երեխան արտասանեց իր անունը, բայց չլսուեց,

այնպէս որ երկրորդ անգամ արտասանելու համար ոյժ գործ դրեց։

—Մոսօ, Մոսօ,—կրկնեց Ժօրժը,—Մովսէս մարգարէ, Մովսէս Խորենացի... Եկ ճրագը գտիր. պատուհանի առջև է դրուած։

Խօսելու միջոցին լուցկին վառեց ու կպցրեց Թիթեղից շինուած փոքրիկ լամպին, առանց ապակու։

—Եկ նստիր,—շարունակեց նա.—դու պէտք է ընթրես, իսկ ես ճաշեմ... Դու բանտարկուած էիր, իսկ ես շան նման աշխատել եմ... Մեզանից ո՞վ է երջանիկ, ե՞ս թէ՞ դու։ Հը՞, ե՞ս թէ՞ դու։

—Ի՞նչ,—հազիւ լսուեց երեխայի ձայնը։

—Դու ընթրիր, ես ճաշեմ. ուրիշ ոչինչ։

Ժօրժը իր երկայն վերարկուի տակից հանեց մի ոչխարի եփած գլուխ, հաց ու փոքրիկ շիշ օղի և դարսեց պատուհանի առաջ։ Մօտ քաշեց միակ հին աթոռը, նըստեց ու ոչխարի գլուխը շտապով մաս-մաս անելով ըսկսեց ագահաբար ուտել։ Չուզենալով խօսելու համար ժամանակ կորցնել, ստի շարժուածքով հրամայեց Մոսօյին ուտել։

Երբ կերաւ, խմեց ու կշտացաւ, վեր կացաւ տեղից, երեխային նստեցրեց իր աթոռի վրայ ու պատուիրեց մնացորդը վերջացնել։ Կարճ ժամանակ մտածելուց յետոյ, սկսեց յետ ու առաջ քայլել ու ինչ-որ փնթփնթալ։

—Անիրաւներ, գարշելիներ,—ձայնը աստիճանաբար բարձրացնելով խօսեց նա,—ուզում են զուարճանալ, ծիծաղել, բայց ձրի... հինգ կոպէկի համար հոգի են տալիս։ Չեն բաւականանում հիանալի անեկդոտներովս, հետաքրքրական պատմութիւններովս... Ասում են՝ «չէ, այդ չեղաւ, պէտք է ցոյց տաս «այբ-բենը», այդ ենք ուզում»։

Ժօրժը զարմանալի ճարպիկութեամբ ու սրամիտ կերպով, իր մարմնին զանազան ձևեր տալով, ներկայացնում էր այբ ու բենի բոլոր տառերը, որոնցից մի

քանիսը չափազանց ծիծաղաշարժ էին, օրինակ Ճ տառը։ Իսկ օ տառը արդէն խայտառակութիւն էր, ուստի Ժօրժը խոյս էր տալիս նրանից։

—Ջհանդամ նրանց գլուխը. ցոյց կը տամ ինչ ուզում են. բայց ինչո՞ւ են պահանջում անպատճառ օ։ Ինչո՞ւ չեն հասկանում, որ այդ բանը ստորացնում է ինձ... Գիտես ի՞նչ արժէր ինձ համար այսօրուայ կերակուրի փողը աշխատելը։ Գիտե՞ս, գիտե՞ս։

Վերջին խօսքը կրկնեց մի քանի անգամ, շեշտակի նայելով Մոսօյի աչքերին։

—Չգիտեմ,—պատասխանեց նա։

—Քեզ հետ ո՞վ է խօսում, լածիրակ... կեր, վերջացրու... կեր, խոզի ժառանգ, բոլորը կեր, բան չթողնես, ապա թէ ոչ՝ քացի կը տամ, կը վռնտեմ այստեղից... Գիտե՞ս, որ ես միւս օրուայ համար երբէք հոգս չեմ քաշում... Գիտե՞ս...

—Ի՞նչ,—վախեցած հարցրեց երեխան...

—Ջահրմար... ասում եմ բոլորը կեր... Ստախօս անիծեալներ, խաբեբաներ... Կոյս N-ը Կօջօրի եկեղեցու գաւթում իր համար գերեզման է պատրաստել, թանկարժէք տապանաքար է դրել պատշաճաւոր արձանագրութիւնով՝ «Աստ հանգչի մարմին կոյս N-ի...» և այլն... ուզում է Գաբրիէլ հրեշտակապետին մոլորեցնել, խաբել նրան, թէ իբր արդէն մեռել-թաղուել է։ Տեսնենք ո՞նց է խաբում... Հօրս գերեզմանը ինձ համար աւելի է... Նա ի՞նչ իրաւունքով ինձ աշխարհ բերեց... Իր զուարճութեան համար ամուսնացաւ, որպէս զի ես վաթսուն տարի տանջուեմ։ Անիծում եմ նրան... Հայրդ էլ մեծ, շատ մեծ քաջագործութիւն է արել քեզ աշխարհ գցելու համար. նզովեալ լինի նա յաւիտեանս յաւիտենից... Գլխիս ցաւ է շինել... Ես ո՞վ, դու ո՞վ. ի՞նչ գործ ունես այստեղ, հա՞... Ես քեզ փոխանակ հուրի մէջ գցելու՝ բերել եմ գլխիս խաթաբալա սարքել... Երևում է՝ խելագար եմ. գոնէ մարդիկ այդպէս են կար-

ծում... Է՛յ, գայլի ծնունդ, կերա՞ր, կշտացա՞ր թէ՞ չէ։

Երեխայի սրտի մէջ դող էր ընկել, նա սարսափում էր այդ մարդուց։

— Կշտացայ,— պատասխանեց նա խղճալի ձայնով։

— Այդպէս։ Ինչացո՞ւ է հարստութիւնը. սրանից աւելի խօ չի կարելի կշտանալ։

Ժօրժը դուռը բաց արեց, ազատ շունչ քաշեց և քիչ մտածելուց յետոյ խօսեց ասենամեղմ կերպով.

— Որդեակս, անհոգ կաց, Աստուած ողորմած է, պառկիր ու հանգիստ քնիր։

Այս ասելով բաց արեց իր հոտած անկողինը, պառկեցրեց Մոսօյին, կրկին անգամ պատուիրեց, որ հանգիստ քնի, և ինքը դուրս գնաց սենեակից։

Երեխան շուտով քնեց։

Ժօրժը դարձեալ սկսեց իր մենախօսութիւնը, սակայն այս անգամ ցածր ձայնով։

— Վաղը կը տանեմ երեխային և կը յանձնեմ իր ուստին։ Կը ստիպեմ իրան, որ իր հարազատ որդու նըման պահի։

Առժամանակ լռելուց յետոյ, յանկարծ սրտալի ծիծաղեց։

— Շատ լաւ է. հէնց այդպէս էլ կասեմ։ Վերջապէս այնպիսի բաներ կը հնարեմ, այնպէս կը վախեցնեմ, որ միւս անգամ այլ ևս չյանդգնի օտարական երեխային փողոց շպրտել։

Վերադարձաւ սենեակն ու պատի վրայ եղած ազատ տեղը կաւիճով լցրեց.

«Ստախօսութիւնը երբեմն ոչ թէ միայն անհրաժեշտ է, այլ այնպիսի բարիք է, որ անկարելի է նրան փոխարինել թէկուզ ամենաառաքինի գործերով»։

Այժմ նրա սիրտը լցուեց կատարեալ երջանկութեամբ։ Խաղաղ ժպիտը երեսին, հաւաքեց բոլոր ցնցոտիները, յարմարեցրեց իր համար անկողինը, երեխայի վերմակը խնամքով ուղղեց ու պառկեց քնելու։

Գ. ԲԱՇԻՆՋԱՂԵԱՆ

# ՀԱՐԱՒԱՅԻՆ ԲՈՒՐՄՈՒՆՔ

(Պանդուխտ ուսանողների կեանքից)

---

Ուսանող Դեմուրեանը մօտեցաւ հեռախօսին։ Վերցրեց եղջերակը, դրեց ականջին։

—85-27,—արտասանեց հանգիստ ձայնով։

—85-27՞,—լսուեց բարակ կանացի ձայն։

—Այո... Merci...

Անցաւ մի փոքր։ Նորից ձայն լսուեց նրա ականջին, խռպոտ, լի ձայն։

—№ 25-ից ուսանող Կարապետեանին խնդրեմ կանչէք... Ինչպէ՞ս, տանը չէ՞... Իսկ չգիտէ՞ք ուր է գնացել... Ո՞չ։ Իսկ ե՞րբ կը գայ։ Լսո՞ւմ էք. երբ գայ, ասացէք, թէ ընկեր Դեմուրեանն էր հարցնում... Դեմուրեան. հեռախօսի № 18-35... այո՛, 18-35, բնակարանի № 10... այո՛, Դեմուրեան։

Տեղը դրեց եղջերակը, շուռ եկաւ անբաւական։ «Ով է իմանում, ո՛րտեղ է հիմա չափչփում,—նկատեց Կարապետեանի հասցէին.—էլ ո՞ւմ կանչեմ... Մանիայի՞ն. բայց հասցէն չգիտեմ. Սուրէնի՞ն՝ նոյնպէս. ա՜խ, Սերիօժի՞ն, անպատճառ»։

Եւ նորից վերցրեց եղջերակը։

—125-25... Ոչ, 125-25,—արտասանեց աւելի պարզ շեշտով.—ազատ չէ՞։

Եւ վայր դրեց եղջերակը։

Հինգ րոպէ անց նորից զանգ տուեց. նոյն հետեւանքը։ Մէկ էլ փորձեց, բայց անօգուտ։ Անբաւական՝ նորից վայր դրեց եղջերակը, դուրս եկաւ։ Ճաշարան շտապեց, ճաշի նստեց հանգիստ։

Հինգ օրուայ ճանապարհը, երկու օր սենեակ փնտռելը՝ կարգին յոգնեցրել էին։ Բայց իրան լաւ էր զգում. սենեակը մաքուր էր, լուսաւոր, արեւի կողմը. գրպանումն էլ բաւական փող կար։ Բացի այդ՝ հետը բերած միրգն էլ չէր փչացել։

Այդ լաւ տրամադրութեան տակ՝ գարեջուր պահանջեց մէ

շիշ։ Ճաշեց ախորժակով, Թարմացաւ գարեջրով։ Յոգնածութիւնն ու մտածկոտութիւնը անցան բոլորովին։ Վճարեց, դուրս եկաւ։ Կամեցաւ զբօսնել։ Բայց միտն ընկաւ միրգը և շտապեց ճաշակել։

Տուն հասաւ, բարձրացաւ սանդուղներով։ Ներս չմտած՝ յիշեց ընկերներին և որոշեց անպատճառ հիւրասիրել նրանց։ Կրկին մօտեցաւ հեռախօսին։ Բայց ոչ Կարապետեանն էր տանը, դեռ չէր վերադարձել, ոչ էլ Սերիօժան։ Անբաւական սենեակն անցաւ։ Բարկացած էր ընկերների վրայ, որ տանը վայր ընկած չեն և մրգի հոտը չեն առնում։ Հարաւի խաղողն ու դեղձը աննման դեսսերտ էին լաւ ճաշելուց յետոյ։ Սովորած, լի ստամոքսը հանգստութիւն էր պահանջում։ Պառկեց անկողնու վրայ ուղղակի տուժուրկայով։ Անուշ քունը շուտով փակեց աչքերը։

Կէս ժամ չանցած՝ ականջն ընկաւ դռան ձայնը։ Բացեց աչքերը, լսեց՝ աղախինն էր։ Հարցնում էին հեռախօսով. Կարապետեանն էր. երկրորդ անգամն էր զանգ տալիս։ Ուրախ-ուրախ հեռախօսի մօտ շտապեց։ Կարապետեանն անչափ ուրախացաւ և՛ ընկերոջ գալստեան, և՛ նրա բերած թարմ մրգի համար։ Նա յանձն առաւ կանչել մօտ ընկերներին և խոստացաւ անպատճառ գալ։

Ուրախ-զուարթ՝ Դեմուրեանը սենեակ վերադարձաւ։ Անկեղծ ուրախ էր, որ շուտով մօտը կը լինեն հայրենակից ընկերները։ Սենեակ մտնելով նայեց շուրջը։ Ոչինչ. իրերը տեղաւորուած են, գրասեղանը մաքուր է, գրքերով զարդարուած. սեղանից վեր՝ պատին բացիկներ են շարուած գեղարուեստական ձևերով. թէյասեղանը մաքուր է, սպիտակ սփռոցով ծածկուած. աթոռները հին չեն. լուացարանը մաքուր է, կախարանը միջակ՝ ոչինչ, լաւ է, ճաշակով է, ուսանողական է։ Կայ և արևելեան ոգի՝ փոքրիկ գորգ անկողնից վեր։ Լաւ է, լաւ, ճաշակով է։ Եւ ինքնաբաւականութեան ժպիտն անցաւ երեսով։

Մինչև ընկերների գալը՝ շտապեց տուն նամակ գրելու։ Հեռագիր երկու օր առաջ տուել էր հասնելուն պէս։ Այժմ էլ նամակ է հարկաւոր գրել, մանաւանդ որ արդէն սենեակ էլ վարձած է, յարմար սենեակ։

Դեռ չէր վերջացրել նամակը, երբ բնակարանի զանգը տուին երկու անգամ։ Լսուեցին աղախնի շտապ քայլերը, և Դեմուրեանի ականջին դիպաւ՝ «այստե՞ղ է ապրում ուսանող Դեմուրեանը Ալէքսանդր Դաւիդիչ»։ Մինչ աղախնի պատասխանը՝ Դեմուրեանն արդէն դռան մօտն էր։ Եւ ընկերների ձևա-

քեր, ուրախ բացագանչութիւններ, ծիծաղ ու ընկերական չարաճճիութիւն իրար խառնուեցին, լցրին խաղաղ բնակարանը։ Սենեակի երեք աթոռը քիչ էին, և ընկերներից երկուսն առանց քաշուելու ընկան անկողնի վրայ։ Կախարանը զարդարուեց, ծխախոտը գործի ընկաւ և սենեակը միանգամայն կենդանացաւ, լցուեց չտեսնուած աշխոյժով։

—Ի՞նչ եղաւ քեզ, Սաշա,—ուրախ ձայնով հարցրեց Կարապետեանը.—ինչո՞ւ այսքան ուշացար։

—Ո՛վ է իմանում, բան էր պատահել, Սաշան չէ՞...,—ժպտաղէմ նկատեց Սերիօժան։

—Ի՞նչ բան,—ծիծաղեց Սուրէնը,—սիրահարուե՞լ է, ինչ է։

—Մի անհանգստանաք,—շտապ պատասխանեց Դեմուրեանը ժպիտը դէմքին,—ոչինչ էլ չի եղել։

—Այժմ ի հարկէ հանգիստ ենք,—ծիծաղելով ասաց Կարապետեանը.—բայց, իսկապէս, շատ ուշացար. ամբողջ մէկ ամիս է, ինչ գրուեցիր մեր էկսկուրսիային, բայց հետներս չեկար։

—Դեռ հինգ օր էլ աւել,—աւելացրեց Մանիան և մօտեցաւ, նայեց բացիկներին։—Օ՜,—բացագանչեց,—նորերն ունես, Սաշա, ինչ լաւե՜րն են։

Ընկերների ուշադրութիւնը պատի վրայ կենտրոնացաւ։ Այդ հանգամանքից օգտուելով՝ Դեմուրեանը ներողութիւն խնդրեց, որ մի քանի րոպէ նրանց մենակ է թողնելու, և դուրս ելաւ սենեակից։ Ընկերները քրքջացին և «Սաշա, Սաշա» բացագանչութիւններով նորից լցրին սենեակը, ետևիցն էլ բարձրաձայն կանչեցին.

—Սաշա, շուտ արի, տես, սենեակդ տակն ու վրայ կը լինի։

—Օ՛, ինչ անուշ հոտ է գալիս, ի՜նչ քաղցր բուրմունք է, Սաշա, այս ի՜նչ հարաւային բուրմունք է, օ...

Եւ նորից լսուեցին բուռն քրքջոց, սրախօսութիւններ։

—Սպասեցէք, ապա սպասեցէք,—բացագանչեց Սերիօժան,—լսեցէք, սո՜ւսս... լսո՞ւմ էք...

Ընկերները լսեցին, որ դուրսը Դեմուրեանը ինչ-որ կարգադրութիւն էր անում աղախնին՝ ասելով.

—Ափսէներ էլ, ինքնաեռը նոյնպէս...

Իսկ աղախինն իր բարակ ձայնով պատասխանում՝

—Շատ լաւ, շատ լաւ...

Տեղաց փրթկոց, քրքջոց, ծիծաղ. և երբ Սաշան վերադարձաւ, նոյն անզուսպ ծիծաղ ու քրքջոցով շրջապատեցին նրան և որպէս թէ նկատողութիւն արին.

—Սաշա, ա՜յ խորամանկ, այդ ի՞նչ քչփչոց էր Անիւտի հետ, ա՜յ-ա՜յ-ա՜յ...

—Ախ, անհամբերներ, ձեր առա՞ջը պատուիրէի աղախնին, ի՞նչ է։ Խեղճ Անիւտի՞ն ինչ էք դիպչում։

—Օ՜յ, ի՞նչ քաղաքավարին է,—հեգնեց Սերիօժան։

—Եւ տեսնո՞ւմ էք, ինչպէս է աղախնին պաշտպանում,—նոյն տոնով նկատեց Սուրէնը։

—Ինչո՞ւ, չգիտե՞ս մեր ասպետ Սաշի սիրտը,—ծիծաղաձայն վրայ բերեց Սերիօժան. — Նա միշտ էլ պաշտպանել է ամեն կնոջ։

—Հաւ, դա նորութիւն չէ,—շեշտեց իր կողմից Կարապետեանը.—միշտ էլ կանանց հարցը Սաշի սրտի ամենամօտ հարցերից մէկն է եղել։

—Է, հիմա մտքներդ ի՞նչ է. էլ մարդ չգտաք, ի՞նձ էք ձեռ առնում,—ուրախ, առանց նեղանալու պատասխանեց Դեմուրեանը։—Անիւտան թէպէտ աղախին է, բայց կին է. իսկ կնոջ հասցէին խօսելիս, մանաւանդ կնոջ ներկայութեամբ, շատ զգոյշ պիտի լինել, նոյն իսկ կատակների մէջ։

—Ճի՛շտ է, ի հա՛րկէ,—միաձայն համաձայնուեցին Սերիօժան ու Սուրէնը շրթունքները սեղմելով։

—Լաւ, լաւ, կին և տղամարդ խիստ զանազանութիւն մի դրէք։ Դա եսական է,—նկատեց Մանիան գրչակոթի հետ խաղալով։ — Ձեր այժմեան կատակները անմեղ են, ընկերական։ Ցանկալի է, որ միշտ, ամեն տեղ էլ այդպէս լինի։ Այդ է գընահատելին։

—Ի հարկէ, ընկեր Մանիա, ի հարկէ... Ի՛նչ խելօք դատողութիւն է անում, է՜...։

—Տեղացին նոր կատակներ, սրախօսութիւն, ծիծաղ, ուրախ բացագանչութիւններ։

Յանկարծ Սերիօժան ցատկեց տեղից, քրքջաց ուժգին և բարձրաձայն աղաղակեց.

—Ա՜, ահա որտեղ է հարաւային բուրմունքը..

Բոլորն էլ թեքուեցին, և իրար խառնուեց հրճուանք ու ուրախութիւն։ Սերիօժան կռացած՝ ծանր արկղն էր քաշում մահճակալի տակից։ Մի քանի ձեռքեր իսկոյն օգնութեան հասան, առաջ քաշքշեցին արկղը։ «Հարաւային բուրմո՛ւնք», «աննմա՛ն հարաւային բուրմունք»։ Քաղցր կուրգուրանքներով արկղը բացուեց աննկատ։

Աղախնի բերած ափսէների մէջ շարուեցին աննման խաղողն ու դեղձը, այնպէս գրաւիչ ու ժպտուն, թարմ ու համեղ։

—Բայց մաքրենք նախ, սպասեցէք,—առաջարկեց Մանիան և ափսէներով մօտեցաւ լուացարանին։

—Տեսնո՞ւմ էք,—ժպտաց Սերիօժան,—կինն աւելի մաքրութիւն սիրող է, աւելի նրբաճաշակ է։

—Ի՛նչպէս չէ,—նոյնպէս ժպտաց Սուրէնը.—դրա համար էլ կին է կոչվում, գեղեցիկ սեռ, քնքոյշ արարած...

—Տղամարդիկդ էք մեզ այդպէս սովորեցրել,—պատասխանեց Մանիան ափսէի մէջ ջուր բաց թողնելով.—եթէ կատաղում էք, նետերը ձեզ էք ուղղում... Բայց ա՜յ... ջուրդ քչանում է, Սաշա։

—Տուէք տանեմ կրանի տակը. այնտեղ ջուրը և՛ թարմ է, և՛ աւելի մաքուր...

—Այո, այո, Անիւտան էլ կօգնի,—քրքջաց Սերիօժան Սուրէնին նայելով։

—Որ այդպէս է, ես էլ եմ գնում Ս [illegible] եղիր, Սաշա. գնանք միասին։

—Օյ, ճյ, խանդոտել է Մանիան, տեսնո՞ւմ էք, — լսուեց Սերիօժայի ձայնը լի քրքիջով։

—Ապա նո՞ր գիտես,—նկատեց Սուրէնը և տեղաց քրքջոց։

—Գնում էք, գնացէք,—կանչեց Կարապետեանը նրանց ետևից.—միայն շրթունքներդ չթացացնէք մեզնից առաջ։

—Իսկ դուք,—լսուեց Մանիայի ձայնը,—գրպաններդ հեռու պահեցէք կարմրաթշիկ «լօձ»-երից։

Հազիւ էին մէկ ափսէն մաքրել, անցել միւսին, երբ յանկարծ զանգը տուին։ Սերիօժան իսկոյն ցատկեց տեղից և դէպի դուռը շտապեց։ Բայց աղախինն արդէն բացեց դուռը, և ներս մտան նոր ընկերներ։

—Օ՜, Էլիա, Թամարա, Գերասիմ,—լսուեց միջանցքում Սերիօժայի ձայնը,—շտապէք, շտապէք, զգո՞ւմ էք հարաւային բուրմունքը։

Դեմուրեանը խիստ ուրախացաւ, որ Սերիօժան դրանց էլ էր իմաց տուել։ Ուրախութեան բացագանչութիւնները, Սաշայի հետ ձեռք սեղմելը, նոր հրճուանքը, սրախօսութիւնը, առատ գուրգուրանքները մրգի հանդէպ՝ նորից սենեակը կենդանացրին, լցրին երիտասարդական աննման աշխոյժով։ Դրան աւելացաւ աղախնի՝ նորից աթոռներ բերելը, նորեկների տեղաւորուելը, կենսուրախ ծիծաղ, ակնարկներ, քրքջոց, բերկրութիւն։ Արկղն աննկատ թեթևանում էր։ Բայց դեռ շատ կար մէջը, դեռ մի քանի օր կարող էր գուրգուրանքներ վայելել։

—Սպասեցէք, ես էլ շուտով կը ստանամ այս հարաւային

բուրմունքից,—խօսեց Գերասիմը խաղողի ողկոյզը ձեռքին։

—Ճի՞շտ, իսկապէ՞ս,—հարցրին Սուրէնն ու Սերիօժան։

—Այո. և աննման նէկտարը՝ «խարջուլի» գինին։

Սուրէնն ու Սերիօժան ցնծացին ուրախութիւնից և մրգին կպան նոր աշխոյժով։

—Է՜,—բացագանչեց Թամարան.—մէկ շաբաթ է՝ այդ յոյսով ենք սնվում, բայց երեսը չտեսանք. աւելորդ է խօսել,—թեքուեց անբաւական և միաժամանակ մեծ հաճոյքով բերանը տարաւ դեղձի կճպուած կտորը։

Սերիօժան ու Սուրէնը համաձայն չէին Թամարայի հետ. նրանք պնդում էին, որ Գերասիմն իր խօսքի տէրն է, և դրսանով խորամանկօրէն Գերասիմին էին խօսեցնում ու նրա բերանով ասածը հաստատում։ Բայց մոռացուեց Գերասիմը, երբ Մանիան թեթև նկատեց, որ այս տարի մայրը շատ ալանի ու սուջուխ է պատրաստել, գուցէ շուտով ստանայ։ Բաւական էր այդ, և ահա չոր միրգը պատկերացաւ վառ գոյներով, համ տուեց բերաններում, կարծես ուտելիս լինէին։ Կարապետեանի կօնսերվն էլ քաղցրաւենիքի հետ լրացրեց ցնծութիւնը և ուսման տարին արդէն ծրագրուեց աննկատ սահումներով...

Առաջին տարին չէր այդպէս։ Միշտ էլ՝ տնից բան ստանալիս իմաց էին տալիս իրար։ Յաճախ էին լինում իրար մօտ։ Երբեմն էլ փող էին վերցնում միմեանցից, երբ տնից ուշանում էր փողի առաքումը, և ստանալուն պէս վերադարձնում էին։ Թատրօն էլ գնալիս իմաց էին տալիս, տոմսակներ էին ձեռք բերում միմեանց համար։ Եւ այդպէս՝ ուրախ, աննկատ գլորում էին ամիս ամսի ետևից։

Բոլորն էլ այժմ ուրախ էին, զուարթ, լի կատակներով։ Էլիան էր համեմատաբար հանգիստ։ Հետաքրքրուած նայում էր բացիկներին։ Սաշան նկատեց այդ, մօտեցաւ ժպտադէմ։

—Դո՞ւր են գալիս քեզ, Էլիա,—հարցրեց անկեղծ։

—Կան լաւերը,—հանգիստ պատասխանեց Էլիան.—պէս-պէս ճաշակ ունես։ Այստեղ կայ և Այվազովսկիյ, և Րէպին, և Վերեշչագին և նորագոյններից։ Հետաքրքրական է և Բէօկլինը. ուժեղ վրձին ունի։ Այս մի քանի պէյզաժները շատ գեղեցիկ են, հարուստ՝ նրբութիւններով, մանաւանդ այս մէկը։

—Սիմվօլիկ կտորներ էլ ունե՞ս, Սաշա,—մէջ մտաւ Կարապետեանը.—այս մէկն ինձ շատ է դուր գալիս։

—Ի՞նչ է, իւրացնելու մի՞տք ունես,—ծիծաղեց Սերիօժան։

—Ինչո՞ւ, Սերիօժա՞ն եմ ես,—պատասխանեց Կարապետեանը ուրախ ձայնով։

Տեղաց քրքջոց։

—Ոչինչ, Սաշա, լաւ ճաշակ ունես,—հանգիստ նկատեց Էլիան։

—Իսկ Բալիէտներին, Էլիա, — մօտեցաւ Մանիան,—այս գլխիկները տես ինչ հետաքրքրական են, ինչ գեղեցիկ, նուրբ դիմագծեր կան, նրբագիծ կազմուածք։

Մանիան հիացած էր Բալիէտներով։

—Մանաւանդ այս մէկը,—ժպտալով նկատեց Սերիօժան և մօտեցրեց մատը մի բացիկի,—տեսէք, ինչ գեղեցիկն է, ինչ գրաւիչ, ինկը,—յօնքերը բարձրացրած արտասանեց,—ինկը Մանիային է նման, չէ՞, Սուրէն, տես։

—Իսկապէս, զարմանալի նմանողութիւն,—շեշտեց Գերասիմն էլ։

Եւ յանկարծ երեքն էլ փրթկացին, քրքջացին սրտալից։ Իրօնիան լրիւ էր։ Միւսներն անտարբեր չմնացին։ Թամարան մի կողմ թեքուած՝ հազիւ էր ծիծաղը զսպում։ Էլիան պաշտպանեց ընկերուհուն։

—Ձեր կատակներն անվերջ են,—նկատեց անբաւական,—բայց Մանիան ճիշտ է նկատում։ Երևում է ծաղրելու մեծ շընորհք ունէք։

—Արժէ՞ բացիկների համար այդքան վիճել,—խօսեց Սաշան.—եթէ այդ իմանայի,—ժպտաց,—ցոյց չէի տայ կամ չէի շարի պատից...

—Այսպէս գեղարուեստօրէն...,—նրա տոնով վերջացրեց Սերիօժան և քրքջաց, վարակեց միւսներին իր քրքջոցով։

—Գեղարուեստօրէն ասացիք, միտս ընկաւ,—խօսեց Էլիան.—ապա Գեղարուեստական թատրօնը չգնմնք մօտ օրերը. շատ հետաքրքրական ռեպերտուար է այս տարուանը. կան նոր պիէսներ։

—Է՛, օպերան աւելի լաւ է,—նկատեց Թամարան,—Մեծ թատրօնում լսում ես աշխարհահռչակ արտիստների, ինչպէս են Շալեապինը, Սօբինօվը։

—Ինչու չէ,—նկատեց Մանիան,—աբօնեմենտ ունես, կարող ես լսել։ Մենք ինչպէս աջողեցնենք։

—Է՛, դժուար է մեր գրպանի համար,—անյոյս նկատեց Գերասիմը. — էստետիկական բաւականութիւնն էժան չի նստում։

—Ինչու,—միջամտեց Էլիան,—կարելի է մատչելի գնանոց տոմսակ ձեռք բերել։

—Դրա համար,—պատասխանեց Գերասիմը,—հարկաւոր է

օրեր առաջ ժամերով հսկել, հերթի կանգնել, այն էլ այստեղի ցրտին։

—Այդ է դժուարը և վտանգաւորը՝ առողջութեան համար, —լրացրեց նրա խօսքերը Կարապետեանը։

—Ապա էլ ինչի՞ս տղամարդն էք,—անբաւական նկատեց Թամարան։

—Լաւ, լաւ, մի անհանգստանաք,—ընդհատեց Էլիան,—Շալեապինն արդէն Լօնդօն ու Միլան է գնում գաստրօլով. դժուար թէ աջողուի լսել նրան։

—Սօբինօվին կաջողուի,—վստահ յայտնեց Թամարան։

—Ճիշտ է, կարելի է յուսալ,—համաձայնուեց Էլիան և յանկարծ բան յիշելով ուրախացաւ, դիմեց ընկերներին բարձր ձայնով։—Իսկ գիտէ՞ք, շուտով Սարա Բեռնարն է մեզ մօտ գալու։

—Ճի՞շտ, Էլիա. — ուրախացաւ Թամարան,—անպատճառ գնանք։

—Ես որ անպատճառ կը գնամ,—յայտնեց Դեմուրեանը։

—Սաշա, ինձ համար էլ տոմսակ կը ճարես, առաջուց խնդրում եմ,—դիմեց Մանիան ժպտալով։

—Ինձ էլ չմոռանաս, Սաշա,—շտապեց զգուշացնել Թամարան։

—Լաւ,—ընդհատեց Էլիան,—դեռ չի եկել, իսկ դուք արդէն տոմսակների մասին էք խօսում։

*
* *

Բոլորն էլ թարմացել, կշտացել էին հարաւային բուրմունքից։ Սաշայի հիւրասիրութիւնն անզօր էր անցնում։ Նրա խօսքերը նոր ծիծաղ, սրախօսութիւններ էին առաջացնում։ Բոլորն էլ փառաւոր տրամադրութեան մէջ էին։ Ժամանակը թռչում էր աննկատ։

Յանկարծ բոլորն էլ անկողնին նայեցին. Սուրէնն ու Սերիօժան ծաղրալի հնչիւններով ոյժներն էին փորձում՝ մերթ իրար գլուխ էին բարձին հրհրում ճարպիկ փաթաթուած, մերթ թողնում էին իրար, շունչ քաշում, մերթ էլ կպչում էին նորից, յանկարծ իրար խուտուտ ածում, ոտներով էլ շարժուելիս յատակին խփում։ Պատկերը ծիծաղելի էր, գրաւիչ։ Տիրեց և ուրախութիւն, և հրճուանք, և հետաքրքրութիւն. ամենքը մարմնացած ուշադրութեամբ դիտում էին, թէ ով կը յաղթի։

Բայց երկար չտևեց այդ բաւականութիւնը։ Շարժուեց տեղից Կարապետեանը, աննկատ վերցրեց քանոնը և, կամացուկ

մօտենալով մարտիկներին, մէկ-մէկ հասցրեց վզակոթներին։

—Ա՞յդ ինչ քաջութիւն է…,—բացագանչեց իբր խիստ նկատողական ձայնով ու հայեացքով,—ըմբիշնե՞ր էք, ինչ է. ու՞ր է ձեր համեստութիւնը կանանց մօտ։

Սրամիտ Սերիօժան զգաց ընկերոջ իրօնիան, իսկոյն, ոտի կանգնեց, մօտեցաւ սեղանին պատուաւոր քայլերով և, ուղղուելով, ոտը ոտին խփեց, գեղաշարժ խոնարհեց գլուխն օրիորդների առաջ, արտասանեց քնքշաձայն՝ «pardon, mesdames…». Բայց լսուեց յանկարծ փրթկոց, բուռն ծիծաղ, որ գնաց, խառնուեց Գերասիմի ու Սուրէնի ծիծաղին։ Պարզուեց կեղծ լրջութիւնը։ Սուրէնն էլ մի կողմից շտապեց սեղանի մօտ և… օրիորդներին բեվերանս արեց, որն առիթ տուեց նոր ծիծաղի, կատակի։

Դեմուրեանն ուրախ էր, երջանիկ, որ կրկին ընկերների շրջանումն էր։ Այդ ուրախութեան մէջ մոռացել էր ամեն ինչ։ Նայում էր ընկերներին, բերկրանում։ Հայեացքն ուղղում էր այս-այն կողմ՝ հանգիստ, անփոյթ։ Մեքենայաբար նայեց սեղանին, գրքերին. աչքը յանկարծ նամակին ընկաւ։ Ուշքի եկաւ, մօտեցաւ, դրեց գրքի մէջ։

—Այդ ի՞նչ նամակ է, Սաշա,—հարցրեց մօտը նստած Մանիան։

—Ինչո՞ւ թագցրիր, ի՞նչ նամակ է,—Մանիայի հետ էլըշտապ Թամարան հարցրեց։

— Ձեմ վերջացրել դեռ…,—մեղմ պատասխանեց Դեմուրեանը։

—Սիրահարական է,—յայտնեց Սուրէնը խորամանկ ժպիտով,—անշուշտ. թէ իմացաք ու՞մն է։

Տեղաց ընդհանուր ծիծաղ, բերկրութիւն։

—Այդ տեսակ բաներից հեռու եմ,—ժպտաց Դեմուրեանը,—տուն եմ գրում, մամայիս. եթէ չէք հաւատում, նայեցէք տեսէք։

—Բաւական է, չարաճճիններ,—բացագանչեց Էլիան։—Սաշա,—դիմեց Դեմուրեանին,—չմոռանաս իմ կողմից բարև և շնորհակալութիւն յայտնել մամայիդ, նոյնպէս բարև Նինային։

—Իմ կողմից էլ, իմ կողմից էլ…,—բոլորն էլ ուրախ, անկեղծ շրջապատեցին Դեմուրեանին։

—Ա՞յս տարի է Նինան գիմնազիան վերջացնում,—հարցրեց Թամարան։

—Այո, այս տարի։

—Իսկ շարունակելու է, չէ՞,—հետաքրքրուեց Էլիան։

—Այո, անշուշտ,—հրճուանքով պատասխանեց Սաշան, որ անչափ սիրում էր իր քրոջը.—կօնսերվատօրիան է մտնելու։

—Ի հարկէ,—գոհ նկատեց Էլիան, որ լաւ գիտէր Դեմուրեաններին.—Նինան ապագայ կունենայ. շատ ընդունակ է երաժշտութեան մէջ։

—Որը չափազանց է սիրում,—հիացմունքով դէպի քոյրը՝ պատասխանեց Սաշան։

—Երաժշտութիւն ասացիք, Մելիքեանի Թառը յիշեցի,—բարձր խօսեց Թամարան.—ինչո՞ւ նրան էլ իմաց չտուիք. Թառը կը բերէր հետը, Սերիօժան էլ կերգէր. ա՜յ լաւ կը լինէր...

—Իսկապէս...,—համաձայնուեց Մանիան։

—Բան չունէ՜ք,—դանդաղ խօսեց Սերիօժան թիկն տալով անկողնի երկաթեայ ձողերին.—չէ, մի գինի էլ մէջտեղ բերէինք, որ լրանար ամեն ինչ։

—Էլ մի կոտրատուի, մի բան երգիր,—դիմեց Էլիան։

—«Хризантемы», Սերիօժա,—դիմեց Մանիան։

—Կամ «Куда, куда вы удалились»,—խնդրեց Թամարան։

—Ձեռ քաշէք, ձեռ քաշէք։

—Նա՞զ ես անում, Սերիօժա,—խօսեց Կարապետեանը,—ուրիշ բան երգիր, եթէ դրանք չես սիրում։

—Ոչինչ էլ հարկաւոր չէ, շատ է կոտրատվում,—անբաւական նկատեց Էլիան։

—Կուզէ՞ք «Ականջներ փակէք» օպերայից փորձեմ,—ծաղրեց Սերիօժան։

Էլիան թեքուեց և սեղանի գրքերով զբաղուեց։

Յանկարծ՝ «Ալէքսանդր Դաւիդիչ»... լսուեց աղախնի ձայնը դռան ետևից։ Բոլորն էլ ծիծաղեցին միաձայն։ Երգը մոռացուեց։ Տեղացին բացագանչութիւններ՝ «Սաշա, Սաշա, տես ի՞նչ է ասում, մի տես, շտապի՛ր»։ Բայց Սաշան արդէն միջանցքումն էր։ Բոլորովին մոռացել էր ինքնաեռի մասին։ Խեղճ աղախինը նորոգել էր երկու անգամ և սպասում էր պատուէրի, թէ երբ կարելի է մատուցել։

Երբ երևաց ինքնաեռը, ամեն կողմից բռնկուեցին ուրախութեան ձայներ, բացագանչութիւններ։ Սենեակն աւելի կենդանացաւ, աշխոյժով լցուեց։ Դրան աւելացան ինքնաեռի գոլորշին ու բաժակների, գդալների զնգզնկոցը։ Սաշան արժանացաւ մի շարք ընկերական կօմպլիմենտների՝ իր այդչափ ուշադիր լինելուն։ Մանիան հրաւիրուեց թէյ պատրաստել, հիւրասիրել։ Թէյի ժամանակ անպակաս եղան և ծիծաղն ու քրքջոցը, և կատակն ու սրախօսութիւնը, և միմեանց խանգարելը սե-

դանի առաջ։ Այդտեղ կեանքն էր թռվռում, առողջ երիտասարդկեանքը, լի կայտառ, բուրալից խաղերով։

Կասկած չկայ, որ ինքնաեռը բոլորովին դատարկուեց։ Բոլորի տրամադրութիւնն էլ փափկել էր, բերկրանքով լցուել։ Անկեղծ ուրախ էին՝ որ կրկին միասին են, երջանիկ էին՝ որ հեռաւոր տեղում չեն մոռանում իրար։ Խօսակցութեան նիւթը և անսպառ էր, և հետաքրքրական։ Խօսակցութեան ժամանակ նորից հրապուրուեցին հարաւային բուրմունքով, նորից վայելեցին ախորժակով։ Եւ ուրախ ու զուարթ՝ խօսքով ու մտքով աննկատ սլացան հարաւ, հայրենի հողը, գեղանկար երկիրը, հարուստ բուսականութիւնը։ Յիշեցին մանկութեան օրերը, գիմնազիական տարիները, զանազան բախտաւոր մօմենտներն ու ծիծաղելի էպիզօդները անցեալից... և վերապրումների մեղմ ալիքները օրօրուելով ու սանրուելով յստակ ցնցուղներով լցրին քնքշացած սրտները։ Իսկ ներկայում՝ աչքի առաջ ընկերական շրջանը, մտերմութիւնը, անցյան ուսումն աւարտելու, կեանքի մէջ մտնելու, ապագայի յոյսերի վրայ... և բոլորի տրամադրութիւնն էլ աւելի քնքշացաւ, բարձրացաւ, սքանչացաւ։

Իսկ ժամանակը թռչում էր աննկատ։

Առաջինը Կարապետեանն ընդհատեց այդ սքանչելի տրամադրութիւնը. մօտեցաւ կախարանին, վերցրեց վերարկուն։

—Ու՞ր, ո՞ւր, Վահան,—բացագանչեց Սաշան՝ նետուելով դէպ ընկերը։

—Ուշ է արդէն, բաւական է...,—յայտնեց Կարապետեանը։

—Ի՞նչն է ուշ, լա՛ւ, նստի՛ր...,—կտրուկ ասաց Սաշան թևից քաշելով։

—Իսկապէս, տուն է հարկաւոր գնալ, բաւական ուշ է,—համաձայնուեց Էլիան՝ ժամացոյցին նայելով և նոյնպէս պատրաստուեց գնալու։

—Ի՞նչ է պատահել. նստէ՛ք, դեռ վաղ է, վաղ. տանն ի՞նչ պիտի անէք. չէ՞ որ միասին շատ ուրախ է,—յորդորում էր Սաշան մնալ։

—Չէ, ես առաւօտը կլինիկա եմ գնալու,—արդարացաւ Կարապետեանը.—երեք հիւանդի պիտի լսեմ. չէ, հարկաւոր է գնալ։

—Մենք էլ վաղը շատ լեկցիաներ ունենք,—յայտնեցին կուրսիստկաները։

—Ձեր մանկավարժական կուրսերն է՛լ... է՛,—անբաւական նկատեց Սաշան, որ սէր չունէր դէպի մանկավարժութիւնը իրաւաբանական ուղեղով։

—Գոնէ դո՛ւք մնացէք, Սերիօժա, Սուրէն։ Գերասի՞մ, դու

Է՞լ... հարաւային բուրմունքով կը գբաղուենք է, անխելքներ, դո՞ւք ուր էք շտապում։

—Է,—արտասանեց Գերասիմը ձեռքը բացասաբար շարժելով,—դեռ այս երեկոյ մտադիր եմ զօօլօգիայից առաջին բանն անցնել։

Սաշան կրկին նայեց Սերիօժային ու Սուրէնին։

—Ոչ, ոչ, մի՛ յուսա,—մերժեց Սերիօժան հայեացքը հասկանալով,—ո՛չ ես կը մնամ, ո՛չ էլ Սուրէնը։ Դեռ մի լաւ պիտի քնեմ, վաղը մինչև 11-ը, մինչև Սուրէնը գայ, Финансовое право-ն անցնենք։

—Բայց ես դեռ լեկցիաներին էլ չեմ գրուել մինչև անգամ. ի՞նչ էք անտեղի շտապում։

—Օ՜, դու այնպիսի պտուղ չես, որ յետ մնաս. դու շուտ կանցնես. գիտենք քո ընդունակութիւնը։

—Դէ, գնանք. շատ մի երկարացնէք,—շտապեցրեց Էլիան հագնուած-պատրաստուած՝ Սուրէնի շնորհիւ։

—Գնանք, գնանք,—յայտնեցին Մանիան ու Կարապետեանը նոյնպէս պատրաստուած։

Թամարան էլ արդէն պատրաստուած էր Սերիօժայի շընորհիւ։

—Շտապենք, — անհանգստացաւ Մանիան, — հազիւ թէ տրամվայի հասնենք։

—Իսկապէս,—համաձայնուեց Գերասիմը։

—Սերիօժա՛, Սուրէ՜ն. դո՞ւք է՞լ, ուրեմն դուք է՞լ գնացէք։

—Օրիորդներին ճանապարհ գցենք, լաւ չէ. դա մեր պարտականութիւնն է,—պատասխանեց Սերիօժան։

—Ի հարկէ,—մէջ ընկաւ Սուրէնը.—թէպէտ կուրսիստկաներ են, մեզ ընկերներ, բայց և այնպէս քնքոյշ սեռ են. պէտք է յարգել։

Երկուսի էլ իրօնիան զգացին օրիորդները, բայց ձևացրին, թէ իբր չեն զգում։

Էլիան չհամբերեց, շանթեց.

—Երկուսով էլ ուղղակի սրախօսութեան գոհարներ էք թափում. հիանալի է։ Բայց խոստովանեցէք, որ պարտականութիւնը չէ դրդում ձեզ մեզ ճանապարհ ձգել, այլ ուղղակի դիւրալի է ձեզ, տղամարդկանցդ, մեզ հետ լինել։

—Ճշմարիտ է,—պարզ յայտնեց Կարապետեանը,—բայց նոյնն էլ ձեզ է վերաբերում։

—Գուցէ և այո, շատ հաւանական է,—պատասխանեց Էլիան, զգալով Վահանի խօսքերի մէջ որոշ ճշտութիւն։

—Բայց և այնպէս գնալ է հարկաւոր,—անբաւական կըտրեց վիճաբանութիւնը Թամարան։

Արդէն միջանցքումն էին, դռան մօտ։

—Գնացէ՜ք ուրեմն. լա՛ւ, չմոռանաք...,—վստահ, ընկերաբար բացագանչեց Սաշան՝ առանց որևէ յետին մտքի, և բարի ժպիտը ցոլաց նրա աչքերում, անցաւ երեսով։

—Մի՛ վրդովուիր, Սաշէնկա, Թանկագին,—պատասխանեցին այս ու այն կողմից.—էլի շնորհ կը բերենք քեզ մօտ, սիրելի, դու միայն գուրգուրա՛, խնամի՛ր հարաւային բուրմունքը։

Տեղացին մի շարք կատակներ, սրախօսութիւններ։

Սենեակը կարծես տխրեց, որ զրկուեց այդ ուրախ, ընկերասէր երիտասարդներից։

—Սա՛շա, — լսուեց Իլիայի ձայնը սանդուղների վրայ,— չմոռանաս նամակիդ մէջ մեր կողմից բարև և շնորհակալութիւն գրել։

—Շատ լաւ, շատ լաւ, շնորհակալ եմ,—բարձրաձայն պատասխանեց Սաշան.—բայց վաղն էլ եկէք, անպատճառ, քանի չէ վերջացել հարաւային բուրմունքը. կը սպասեմ, ցվո՛ղը։

Ուրախ յետ դարձաւ, ծածկեց բնակարանի դուռը, անցաւ սենեակը։

Անկեղծօրէն ուրախ էր ընկերների գալուստին։ Յիշեց մի քանի կատակ ու սրախօսութիւններ և ծիծաղեց ինքն իրան։ Նայեց շուրջը. կային ընկերների հետքերը. անկողինն անկարգ էր, աթոռները՝ թափթփած, գրքերը սեղանի՝ խառնուած, մոխրամանը՝ լի վերջացած ծխախոտներով։ Բայց անչափ ուրախ էր այդ անկարգութեանը, որը լի էր անկեղծ, ընկերական ոգով։

Սենեակից էլ շատ գոհ էր. շատ յարմար է, մաքուր է, հեռախօս կայ տանը, տանտիկինն էլ բարի պառաւ կին է։ Սենեակի ամսավճարն էլ երէկ տուեց. էլ ի՞նչ է հարկաւոր։ Վաղն էլ լեկցիոններին կը գրուի ու կանոնաւոր կը յաճախի։

Եւ գեղեցիկ տրամադրութեան տակ՝ շտապեց նամակը վերջացնել։

ՍՏ. ՕՀԱՆԵԱՆ

# ԾՆՈՂԱԿԱՆ ՍԻՐՏ*)

(Շվէդական բանուորների կեանքից)

---

Ամէն շաբաթ օր, ստանալով իր շաբաթական վաստակը, ծեր Մանսօնը վերցնում դնում էր առանձին հինգ կրօն՝ բնակարանի վարձը վճարելու համար, որը, իրաւ է, բաղկացած էր միայն մի սենեակից, բայց և այնպէս նստում էր նրանց վրայ ամսական 20 կրօն։ Այդ անելուց յետոյ՝ նրա մօտ մնում էր տասն-եօթ ամբողջ եօթանասուն-հինգ հարիւրերորդական կրօն։ Հարիւրերորդականները՝ բանուորը սովորաբար պահում էր ծխախոտի ու գարեջրի համար, երկու կրօն մտցնում էր հիւանդութեան դէպքում նպաստող փոխադարձ-օգնութեան

---

*) Այս փոքրիկ պատմուածքի հեղինակը շվէդական նորագոյն յայտնի կին գրող Մարիա Սանդէլն է։ Նա հռչակ ստացաւ բանուորական կեանքից վերցրած իր պատմուածքների առաջին ժողովածուով, որը լոյս տեսաւ «Սովամահութեան շեմքին» ընդհանուր վերնագրի տակ, կարճ ժամանակում սպառուեց Շվէդիայում և նոյն իսկ թարգմանուեց գերմաներէն։ Հեղինակի բոլոր աշխատութիւնների նիւթը և տուած տիպերի միջավայրը բանուորական կեանքն է, որ արտացոլացնում է գեղարուեստօրէն, համարեա ֆոտոգրաֆիական ճշտութեամբ և լի կարեկցութեան ու համակրութեան զգացմունքներով. և այդ շատ բնական է, որովհետև ինքը Մարիա Սանդէլն էլ գործարանական մի հասարակ բանուորուհի է, անցել է չարքաշ աշխատանքի ու զրկանքների խիստ շկօլան, բայց չնայելով իր աղքատութեան՝ ստացած վաստակի մեծ մասը տուել է ոչ այնքան հացի, որքան գրքերի՝ իր ուսման ծարաւը յագեցնելու, իր կրթութեան պակասը լրացնելու համար՝ աշխատանքից դուրս կարճ ժամանակում։ Աչքի է ընկնում մանաւանդ իր անչափ համեստութեամբ։ Ռուս թարգմանիչ Անտօն Գօրեմիկան, ձեռնարկելով «Ծնողական սիրտը» պատմուածքի թարգմանութեան, երբ դիմում է հեղինակին՝ խնդրելով մի քանի կենսագրական տեղեկութիւններ հաղորդել, նա հրաժարվում է կատարել, պատճառաբանելով. «Ի՞նչ նշանակութիւն ունի գրողի անհատական կեանքը։ Եթէ մէկը հետաքրքրվում է իմ աշխատութիւններով, դա ինձ խորապէս յուզում է միայն, բայց ես ուզում եմ մնալ ստուերում»։

Այդ համառօտ տեղեկութիւնները տալուց յետոյ, մենք կը ծանօթացնենք հայ ընթերցողներին այդ կին գրողի գրչի ստեղծագործութիւններից մէկի՝ «Ծնողական սիրտը» պատմուածքի հետ, որ նորերս ռուսերէն թարգմանութեամբ լոյս տեսաւ «Вѣстникъ Знамія»-ի III ալմանախում և որի նիւթը առնուած է դարձեալ բանուորական կեանքից։

գանձարկղը, ինքնակրթութեան կրուժօկը և արհեստակցական միութիւնը։

Եթէ, այդ վճարները տալուց յետոյ, երկու կրոնից որևէ քան մնում էր, այն էլ սովորաբար նուիրում էին որևէ կարօտեալ ընկերոջ օգտին։

Վերոյիշեալ ձևով ստացած վաստակը բաժանելուց յետոյ՝ նրա մօտ մնում էր 15 կրոն, որը և լիովին յանձնում էր իր կնոջը՝ Մարթային։ Այդ գրօշներով Մանսօն ընտանիքը ստիպուած էր ապրել ամբողջ եօթն օր։

Մշտական կարիքն ու հոգսը սովորաբար պատճառ են դառնում՝ վաղաժամ ծերանալու և զառամելու։ Բայց Մարթային նրանք չկարողացան ընկճել։ Նա դառնում էր կամ, աւելի ուղիղ կը լինի ասել, միշտ էլ ընտանիքի բարի պաշտպան հրեշտակն էր։ Նրա աշխատող ձեռքերը չէին հանգստանում։ Ամբողջ ընտանիքը նա պահում էր մաքրութեան և կանօնաւորութեան մէջ, սենեակը միշտ սրբուած, հաւաքուած էր, և ոչ մի ժամանակ Մարթան չէր դիմում աղքատներին յատկացուած նպաստների օգնութեանը, բացի միայն մի անգամից, երբ հարկաւոր էր կօշիկներ առնել դպրոց յաճախող երկու երեխաների համար։ Ամեն անգամ նա մի կերպ կարողանում էր ծայրը-ծայրին հասցնել։ Բայց դրա փոխարէն ամբողջ օրը նա մի րօպէ իսկ ազատ ժամանակ չէր ունենում։ Առաւօտեան ժամը 5-ին նա արդէն կանգնած էր լինում հացավաճառի խանութի առաջ, ցամաք հաց վաճառելուն սպասելով, իսկ այնուհետև, առանց ձեռքերը պարապացնելու, աշխատում էր ամբողջ օրը՝ մինչև ուշ գիշեր։ Ասենք, գիշերն էլ այդ յոգնած կինը չէր կարողանում ունենալ այն անհրաժեշտ հանգստութիւնը, որը այնքան կարևոր էր նրա համար. այստեղ էլ ընտանիքի ամենափոքրիկ անդամ՝ առողջ ախորժակ ունեցող ծծկեր աղջիկն էր յայտնում իր իրաւունքները մայրական կաթը վայելելու համար և, եթէ միանգամից չէր գտնում մօր կուրծքը, իսկոյն արտայայտում էր իր անբաւականութիւնը ականջ խլացնող աղաղակներով։ Սակայն, չնայելով այդ ծանր վիճակին և յաճախ տաժանակիր աշխատանքին, Մարթան միշտ էլ մարմնացած զուարթութիւն էր։ Ընթերցողները իմ այդ ասածներին թերևս թերահաւատութեամբ վերաբերուեն. այնուամենայնիւ ես չեմ չափազանցում։ Մանսօն մայրիկը ոչ միայն աշխատանքի միջոցին էր անընդհատ երգում, այլ և ժամանակ էլ էր գտնում աւելացնել իր գիտութեան պաշարը։ Անկասկած, այդ բանին նպաստում էր այն աջակցութիւնը, որ ցոյց էր տալիս նրան իր ամուսինը, որը ոչ

միայն Նրա հաւատարիմ օգնականն էր աշխատանքի մէջ, այլ և, ինչպէս ասում են, իր կնոջ համար հոգին չէր խնայում ու համարում էր Նրան աշխարհիս ամենալաւ կինը։ Հարկաւոր չէ կարծել, ասենք, որ Մարթայի տրամադրութիւնը միշտ էլ յիշեցնում էր իրանով գարնանային զեփիւռի քնքուշ բուրմունքը։ Բաւական էր միայն, որ ընտանիքի կրտսեր վեց անդամներից մէկն ու մէկը լուրջ անհնազանդութիւն ցոյց տար, նա, իբրև մայր, փոթորկի նման նետվում էր յանցաւորի վրայ ու այդպիսի րօպէներում անխնայօրէն քաշքշում էր մազերից և, ի հարկէ, հասցնում էր անմեղին էլ, մեղաւորին էլ։

Պարզ բան է, այդպիսի դէպքերում երեխաները տրտնջում էին գործուած անարդարութեան համար, բայց և այնպէս մայրը այդ ամբողջ փոքրիկ աշխարհի այլֆան ու օմէղան էր, բացառութեամբ միայն Մայկկայից, որը ամենից աւելի էր սիրում հօրը։

Մի անգամ, Նրանց ծանօթներից մէկը, տեսնելով որ Մանսօն ամուսինները ուժասպառ են լինում ընտանիքը պահելու իրանց ոյժից վեր բեռի տակ, առաջարկեց իր հովանաւորութիւնը երեխաներից մէկին ապաստարանում տեղաւորելու համար։ Անշուշտ այդ առաջարկը խոշոր օգնութիւն էր ընտանիքի համար։ Ինչպէս հայրը, այնպէս և մայրը հասկանում էին, որ հրաժարուել այդ օգնութիւնից անկարելի է։ Այժմ միայն հայրն է ստանում կարագ իւղ քսած հաց, իսկ Մարթան, եթէ քսում էլ էր իր բաժին պատառ սև հացին, որը կազմում էր Նրա ամբողջ Նախաճաշը, այնուամենայնիւ խնայողաբար այնքան էր քերում Նրան այդ պատառի խաւոչներից, մինչև որ իսկապէս կարագ իւղից միայն մի թեթև յիշողութիւն էր մնում։

Մնում էր միայն վճռել այն հարցը, թէ երեխաներից ումը ապաստարան տալ։ Այդ հարցի լուծումը երկար ժամանակ ձգձգվում էր թէ մարդու և թէ կնոջ կողմից։ Բայց մտածելու համար տրուած ժամանակամիջոցն անցնում էր, և, վերջապէս, վրայ հասաւ վերջին օրը, երբ Նրանք որոշ պատասխան պիտի տային. այլ ևս անկարելի էր յետաձգել։

Սեղանի վրայ վառվում էր լամպը մեղմ ու աղօտ լոյս սփռելով սենեակի մէջ։ Երեխաները քնած էին։ Բոլոր անկիւններից երևում էին սաւանները և կարկատաններով աչքի զարնուող վերմակները, իսկ օդը լցուել էր ննջողների հաւասարաչափ շնչառութեան ձայներով։

Մարթան աշխատում էր վառարանի մօտ մտազբաղ և լուռ։

Նրա գործը այդ երեկոյ, սովորականի հակառակ, աջող չէր գընում, շուտ-շուտ վայր էր ընկնում նրա ձեռքից սրբիչը, և նա արտասուքից պղտորուած աչքերը շրջեցնում էր սենեակի ներսը։ Վերջապէս կերակուր պատրաստելու կաթսան մաքրեց, վերջացրեց, կախեց սրբիչը՝ որպէս զի չորանայ՝ և ապա մօտեցաւ իր մարդուն, որ այդ միջոցին խորասուզուել էր իր արհեստակցական միութեան վերջին ժողովի արձանագրութեան ընթերցանութեան մէջ։ Նա աչքերը վեր ուղղեց, և մի քանի վայրկեան մարդ ու կին թախծութեամբ համակուած նայում էին իրար, կարծես չհամարձակուելով խօսք բանալ։

—Դէ վերցրու լամպը,—խզեց վերջապէս այդ ծանր լռութիւնը ընտանիքի գլխաւորը և այդ խօսքերով վեր կացաւ տեղից ու կնոջ ուղեկցութեամբ գնաց դէպի գահաւորակը, որի վրայ անխռով քնած էին Խիէլմարըն ու տասնամեայ Սվէնը։ Մարթան ուղղեց լամպի լոյսը իր անդրանիկ զաւակի վրայ։

Տղան, ինչպէս երևում էր, բարձին կպչելուն պէս իսկոյն էլ քնել էր, որովհետև սաւանը, որը միևնոյն ժամանակ ծառայում էր և իբրև բարձի երես, ձգուած էր հարթ այնպէս, ինչպէս որ փռել էր մայրը՝ անկողինը ձգելիս։ Այդ սպիտակափայլ սաւանի ֆոնի վրայ առանձնապէս աչքի էր ընկնում քնածի արևից սևացած դէմքը։

«Այդ տղան,—մտածեց հայրը, դիտելով տարիքից աւելի շուտ զարգացած իր երեխային,—արդէն սկսում է գիտակցել իր ապագայ տեղը կեանքի մէջ և հասկանալ, թէ որքան ծանր բան է գոյութեան կռիւը, իսկ միևնոյն ժամանակ նրա մանկական սիրտը գրաւում են դեռ զուարճութիւնները, և նրա մտքերի մէջ դեռ ևս խաղերն են իշխում»,—եզրակացրեց նա, նկատելով որ երեխան յանկարծ քնի մէջ շարժեց մատները, իսկ նրա շըրթունքների վրայ խաղաց ժպիտը։

Այն միջոցին, երբ հօր գլխում այդ մտածմունքներն էին ծագում, մօր մտածմունքները ընթանում էին բոլորովին ուրիշ ուղղութեամբ։ Նա աչքն ուղղեց իր տղայի շապկին և տեսաւ, թէ ինչպէս մեծացել է նա, իսկ շապիկը կարճացել. թևերը հազիւ էին հասնում երեխայի արմունկներին. սաստիկ մաշուած կտորի արանքից երևում էր տղայի նիհար կուրծքը։

«Եթէ մի կտոր տակից դնեմ ահա այստեղ և երկուսն էլ՝ այնտեղ և կարկատեմ օձիքը,—մտածում էր Մարթան,—նա մի առ ժամանակ էլ կարող էր այդ շապիկը հագնել, իսկ յետոյ արդէն կը մնար Սվէնին»։

Յանկարծ Մարթան մտաբերեց, թէ ինչու են իրանք՝ ա-

մուսնու հետ միասին՝ կանգնած այդ մահճակալի մօտ, և արագ երկչոտ հայեացք ուղղեց մարդու վրայ։

—Նա այնպէս մեծ է և խելօք, որ, գուցէ, միւսներից աւելի լաւ կարող լինի յարմարուել նոր կեանքին,—դանդաղօրէն արտասանեց հայրը; սակայն նրա ձայնի մէջ նկատւում էր անվճռականութիւն։

Մարթան չհասկացաւ, որ ամուսինը իր ասելու ձևով ուղղակի աղերսում էր կնոջը հակասել իրան։ Նա շառագունեց և քիչ մնաց, որ բղաւէր։

—Խիէլմարսի՜ն։ Վերցնել ինձանից Խիէլմարսի՜ն։ Խելքըդ կորցրե՞լ ես, ի՞նչ է։ Նրան, ումը մենք այնքան սաստիկ փափագում էինք։ Դու ախար քիչ մնաց որ գժուէիր ուրախութիւնիցդ, երբ նա, վերջապէս, աշխարհ եկաւ, և այն էլ այնպէ՜ս սքանչելի երեխայ։ Յիշո՞ւմ ես, ինչպէս դու գնացիր ու առար նրա համար բազմաթիւ զանազան իրեր և պարծանքով բերիր կօշիկներ, երբ մեր այդ խեղճ մանկիկը դեռ ևս երկու շաբաթական էր միայն։ Մինչդեռ այժմ դու ուզում ես տալ նրան ուրիշների՜ն։ Ի՞նչ է, դու սիրտ չունե՞ս միթէ։

Այն ինչ հօր դէմքից երևում էր պարզ կերպով, որ նա սիրտ ունէր և այն էլ սիրող սիրտ, բայց մայրը դարձեալ շարունակեց աւելի ու աւելի քնքոյշ ու մեղմ ձայնով.

—Ա՛խ, դու չգիտես, թէ ինչ հրճուանք է առաջին երեխան. դա նոր շաղկապն է մատաղ բաղդաւորութեան, որը դարձնում է կնոջը այնքան երջանիկ, հնարաւորութիւն է տալիս նրան վայելելու ոչ-երկրային բերկրանքի զգացմունքը և լցնում է նրա սիրտը՝ նրա մէջ առաջ եկող նոր կեանքի զարգացման կարևորութեամբ։ Անդրանիկը՝ դա այն էակն է, որի հետ զրուցում է մայրը և որին փայփայում նրա ծնուելուց դեռ շատ առաջ, ենթադրելով որ նրա գլխիկը զգում է իր կրծքի ներքոյ։ Որովհետև, գիտես,—նկատեց Մարթան սովորեցնելով,—մայրը միշտ էլ համարում է իր արգանդի պտուղը արդէն կենդանի և իր երևակայութեան մէջ պատկերացնում է նրան ամենահմայիչ տեսքով, թէև խելքը յաճախ նրան ասում էլ է, որ իր ապագայ երեխան, կարող է պատահել, իր փոքրիկ մատիցն էլ աւելի չլինի։ Իսկ յետոյ… երբ, վերջապէս, այդ իր ակնկալածն իր գրկին պառկած է լինում, և դեռատի մայրը զգում է նոր՝ մինչև այդ ժամանակ դեռ ևս չճաշակած քաղցր զգացմունքի թափը, երբ փափագ է զգացւում գրկի մէջ առնել և փայփայել ամբողջ աշխարհը և սիրտը լցւում է բաղդաւոր պարծանքով ու այն մտքով, թէ դու ամենքից բարձր ես, և երբ ըղ-

գում ես քեզ այդքան հարուստ, այդպէս անչափ հարուստ…

Մարթան բառեր էր որոնում, որպէս զի վերջացնէ իր միտքը, բայց չէր գտնում։ Նա խեղդեց թագցրած բախտաւորութեամբ լի իր հառաչանքը, ձեռքով որդու տակ խրեց վերմակը և ապա կարեկցութեամբ խառն արհամարհանքի շեշտով նկատեց.

—Ասենք՝ ես ինչո՞ւ համար եմ այդ բոլորը ասում քեզ։ Միևնոյնն է, տղամարդիկ մի կաթիլ անգամ հասկացողութիւն չունեն կանանց գործերում։ Աւելի լաւ է, անցնենք Սվէնին։

Մանսօնը անուշադիր թողեց իր սեռի մասին արուած նկատողութիւնը և դուրս հանեց Սվէնին, որը պառկել էր ոտքերը դէպի եղբայրն ուղղած և բոլորովին թաղուել վերմակի սաւանի մէջ։

—Սատանան գիտէ միայն՝ թէ ո՛րտեղից լոյս ընկաւ այս երեխան,—ասաց հայրը, դնելով նրան Խիէլմարսի կողքին։—Նա ամենափոքր նմանութիւն էլ չունի ոչ ինձ և ոչ էլ քեզ։ Դեղձան և տափակ-քիթ։

—Դատարկ տեղից մի՛ խօսիր։ Նրա մազերը կատարեալ ոսկի են,—նկատեց մայրը։—Իսկ ինչքա՜ն խելօքն է նա։ Կը տեսնես, որ այդ մեր տղայից մեծ մարդ դուրս կը գայ… Ա՜խ, եթէ միայն փող ունենայինք, նա կարող էր գիտնական մարդ դառնալ։ Բայց դրա վրայ, ըստ երևոյթին, չպէտք է յոյս դնել։

Մանսօնը յարմար առիթ նկատեց պատասխանելու կնոջը տղամարդկանց հասցէին ուղղած կծու խօսքերի համար և մտածկոտութեամբ արտասանեց.

—Կարելի է, որ ապաստարանը…

—Ապաստարանի երեխաները միշտ նման են լինում կլօլակների, բայց առանց միս ու պղպեղի,—կարճ կերպով ընդհատեց նրան Մարթան։ — Այդ դու ինքդ էլ շատ լաւ գիտես։

—Ո՛չ, ես գիտեմ հակառակ օրինակը։

—Լոկ զուարճալի պատմուածքներ են դրանք… բայց եթէ կարող էիր դու տալ նրան։

Մօր ձայնի մէջ լսվում էր կշտամբանք։

—Ո՛չ, ես… այնպէս…։ Չէ՞ որ կարիքն է ստիպում,—հարկաւոր համարեց արդարանալու հայրը։—Բացի դրանից, մենք չէ՞ որ գանձել ենք նրա համար խնայողական մարկաներ։ Մեր այս տաժանակիր ապրուստում պէտք է համարել նոյն իսկ մխիթարութիւն, եթէ այդ տղան չխորտակէ իր ընդունակութիւնները։

Իսկ նա ունի, այ պառաւ։ Այն էլ առաջին տեսակից։

Մայրը հաստատեց հօր ասածները՝ հպարտօրէն գլխով անելով, և ապա երկուսն էլ զգուշաբար անցան սենեակի միջով դէպի աթոռների վրայ տեղաւորուած՝ անձև քնած՝ զանգուածը։

—Խեղճուկ։ Ինչպէ՜ս նիհար է նա,—նկատեց մայրը՝ նայելով մանկան ներս ընկած թշերին։

Հօր դէմքից երևում էր, որ որդու հիւանդոտ տեսքը խորապէս վշտացնում էր նրան։

—Նրա մէջքը, թւում է ինձ, գնալով աւելի է վատթարանում,—ասաց նա։

Մայրը երկար հայեացք ձգեց վերմակի տակ բոմբիի պէս փաթաթուած կմախքանման երեխային։

Մի քանի րոպէից յետոյ մայրը վեր բարձրացրեց գլուխը և սրբեց աչքերից հոսող արտասուքը։ Հէնց այդ րոպէին էլ նախազգուշացնող շարժումով նա հօրը մի կողմ քաշեց, նկատելով որ որդու կապտած կոպերը անհանգիստ կերպով դողացին, և երկուսն էլ, աշխատելով քայլել առանց աղմուկ հանելու, անցան նրա մօտից դէպի անկիւնի կողմը, որը գոյացել էր անկողնու և պատի արանքում։ Այստեղ էր Մայկլայի և Գերանի անկողինը։

—Վերցնենք նախ Գերանին,—խնդրեց Մարթան, բռնելով ամուսնու շապկի թևքից այն վայրկեանին, երբ նա ուզում էր վերցնել մահճակալի վանդակը, որպէսզի աւելի մօտիկից նայէ իր պստիկ աղջկանը։—Դէ մի լոյս արա տեսնենք սրա կլորիկ գանգրահեր գլուխը։ Մի՞թէ սքանչելի մանկիկ չէ սա. հը՞։

—Առաջին տեսակի տղայ է,—ասաց հայրը և համբուրեց Գերանի՝ խնձորի պէս կարմրած թուշը։

—Այս երեխայի մէջ ոչ մի վատ բան չկայ,—պատասխանեց մայրը։—Եւ ինչպիսի՜ օգնական է ինձ համար։ Նա վազում է յանձնարարութիւններս կատարելու, կարողանում է սուրճ աղալ և հսկում է մեր ծծկեր երեխային։ Իսկ երբ ես ամանեղէնները եմ լուանում, նա սրբում է գդալները և յետոյ մի ակնթարթում տանում պահարանը դնում։ Քիչ առաջ ես կապել էի նրան իմ՝ խոհանոցի գոգնոցը և մէկ, երկու, երեք անգամ նա թաւալուեց յատակի վրայ իր կարճ ոտներով խճճուելով նրանում։ Եւ ես ստիպուած եղայ ազատել նրան։ Նա ինքը առանց գոգնոցի էլ հազիւ է կարողանում վեր կենալ տեղից, եթէ վայր է ընկնում։ Այնպիսի հաստափորն է։ Ախար, մի մտածի՛ր, ընդամենը հինգ տարեկան է դեռ։

—Ես, ճշմարիտ, սկսում եմ արդէն մտածել, որ դու նրան ամենքից աւելի ես սիրում։ Մինչդեռ նա, ախար, մերը չէ։

—Լաւ, դրա մասին ես երբէք չեմ էլ մտածում։ Չէ՞ որ այս փոքրիկը բացի մեզանից ոչ ոք չունի այս աշխարհում։ Սրան, գոնէ, և ոչ մի դէպքում չենք կարող տալ։

—Այո. իրաւացի ես,—համաձայնուեց հայրը և կռացաւ մահճակալի վրայ։

Վերջապէս նա կարողացաւ հասնել Մայկկային։ Եւ այդ ժամանակ առա հարկաւոր էր տեսնել ծեր Մանսօնին։ Նրա կինամոնագոյն աչքերը քնքշութիւնից ժպտում էին ու փայլում։ «Իմ կեանքի ուրախութիւնը»—մտածում էր նա և նոյն րօպէին էլ նրա հայեացքը սահում էր աղջկայ ուռուցիկ փոքրիկ կրծքի վրայից, որի ծծիկները կարմրին էին տալիս վարդի քնքոյշ թերթիկների նման, դէպի պինդ փոքրիկ թաթիկները, իսկ այնտեղից էլ մուգ կինամոնագոյն գանգուրներին, որոնք անկարգ թափթփուած էին բարձի վրայ։ Բանուորը նայեց երեխայի՝ զայրոյթով ցցած տափակ քթին և ծնօտատակի փոսիկին, յամառ բերնին և ունքերի նուրբ կորագծին։ «Իսկ և իսկ ես եմ»—մտածեց նա ինքն իրան և կռացաւ աւելի ցած, կամենալով աւելի մօտիկից դիտել իր պատկերը։ Յանկարծ քնածի թշերի վրայ հօր միրուքի պատճառած խտուտից գոյացան երկու սիրուն փոսիկներ։ Մանսօնը դրանցից էլ ճանաչեց իր նմանութիւնը և հայրական պարծանքով լի՝ մի կողմ հրեց միրուքը և պինդ համբուրեց իր սիրելիին։

—Այն ի՞նչ է ձեռքի մէջ,—հարցրեց յանկարծ հայրը։

Մայրը զգուշաբար բաց արեց աղջկայ սեղմած մատները։

—Մազեր,—ասաց նա։

—Ո՞րտեղից է նրա ձեռքն ընկել,—զարմացաւ հայրը։

—Կարծես Սվէնի գլխի մազերից լինեն։ Դու մի՞թէ չնկատեցիր, թէ ինչպէս նա քնելուց առաջ գահաւորակի վրայ քաշ էր գալիս տղերանց հետ և «աւազակներ» խաղում։ Նրա հախիցը գալ շատ դժուար է։ Դու նրան չափից դուրս արդէն երես ես տալիս։ Նրան հարկաւոր է տնից հեռացնել։

Բայց մօր տրտունջները չհասան բանուորի ականջին. այն աստիճան նա խորասուզուած էր իր գանձը դիտելով։

Տիրող լռութիւնը հնարաւորութիւն տուեց Մարթային մտաբերելու Մայկկայի բոլոր օյինբազութիւնները։ Նրա յիշողութեան մէջ յարութիւն առան աղջկայ անհամար չարութիւնները, և այն բոլոր անախորժութիւններն ու նկատողութիւնները, որ նա ստիպուած էր լինում լսել Մայկկայի պատճառով

հարեաններից ու ծանօթներից. յամառութիւն, անհնազանդութիւն և մի անհաւատալի ընդունակութիւն՝ պատռելու ու կեղտոտելու այն ամենը, ինչ որ ստանում էր աղջիկը։

Ինչպէս որ այդ երեխան ահաբեկում էր ամենքին, միևնոյն ժամանակ նա կարողանում էր նաև ստիպել սիրելու իրան...

Մայրը ակամայից ժպտաց, յիշելով մի հին դէպք։

—Այո, այո.—յանկարծ նկատեց մայրը հօրը, որ դեռ շարունակում էր փաղաքշել աղջկայ ձեռքը.—նա ամենևին կարօտ չէ քո օգնութեանը եղբայրների դէմ։ Մինչդեռ՝ դու դեռ պատրաստվում էիր օգնելու նրան, յիշո՞ւմ ես։

—Ո՛չ. այդ ե՞րբ էր։

—Է՛հ. շատ առաջ. երբ նոր էր ծնուել, և դու ասացիր քրոջս. յիշո՞ւմ ես։ «Օ՛. այս մէկը աղջիկ է։ Խե՜ղճ. սա ստիպուած պիտի լինի գործ ունենալ երեք մեծ եղբայրների հետ։ Բայց, բան չկայ, մի վախեցիր։ Ես կարող եմ քեզ պաշտպանել նրանցից»։

Մարթան՝ իբրև պատասխան այդ խօսքերի՝ այնպիսի սիրալիր կմշտոց ստացաւ ամուսնուց, որ քիչ էր մնացել՝ հարկադրուէր ձեռքի լամպը վայր ձգելու, և ապա երկու ամուսինները իրար հետ փոխանակուեցին երկարատև, քաղցր ժպիտով։ Սակայն, յանկարծ, Մարթայի ընդհատուած մտածմունքները վերանորոգուեցին դարձեալ։

«Մայկկան կատարեալ վայրենի է. նրան հարկաւոր է անպատճառ հեռացնել տնից»։

—Հը՞, ի՞նչպէս ես կարծում։ Չէ՞ որ միշտ էլ կարելի է նրան տուն յետ բերել, եթէ...

Մարթան անմիջապէս ընդհատեց իր պատճառաբանութիւնները, նկատելով որ ամուսինը ջղայնօրէն բռնեց մահճակալից։

—Ո՛չ,—կարճ կերպով արտասանեց նա։

Այդ եղանակը գրգռեց Մարթային, և նա պատրաստուեց դիմադրութիւն ցոյց տալ, բայց Մանսօնը նախազգուշացրեց նրան։

—Հեռացնել Մայկկայի՞ն։ Եթէ նա անհնազանդ է ու քմահաճ, յիշի՛ր թէ ինչպէս նա կարողանում է զղջալ նոյնպէս, և որքա՜ն սիրալիր է նա այդ ժամանակ։

Մօր դէմքը միանգամից պարզուեց։ Նա մտաբերեց իր աղջկայ փոքրիկ բերնի ջերմ համբոյրները, արցունքներից ամբողջովին թրջուած դէմքը և խոստումները՝ որ «ոչ մի ժա-

մանակ, ո՛չ մի ժամանակ նա այլևս այդպէս բան չի անի»։ Նա պարզ կերպով պատկերացրեց իր աչքերին այն անզուսպ հեկեկանքները, որոնք այդպիսի րոպէներին ցնցում էին երեխայի քնքուշ կուրծքը, և դէմքի յանկարծակի պայծառանալը, քնքշութիւնն ու ուրախութիւնը մեղքերը քաւող աղջկայ…

—Եթէ նրան վերցնէին ինձանից, կեանքումս ես այլ ևս մի ուրախ րոպէ չէի ունենայ,—վճռեց մայրը, և նրա ձայնի մէջ հնչում էին զղջումն ու գորովը։—Այն ժամանակ մեր պահեստում մնում է միայն ահա այս մէկը։ Դէ նայիր այս կողմ։

Ընտանիքի ամենափոքր անդամը, պառկած՝ մահճակալի մէջ բաց աչքերով, ծծում էր բերանը դրած ռետինէ ծծիկը։ Բայց հէնց որ նկատեց, թէ նայում են իրան, իսկոյն էլ սկսեց իր սովորական երգը, որը գիտէր երգել ճաշելուց առաջ։

—Ինչպէ՜ս քաղցած է բալիկս,—զգացմունքով ասաց մայրը, դնելով լամպը սեղանի վրայ և նստելով Աննիկի հետ միասին՝ ծնկներին դրած։—Այս աղջկանս,—շարունակեց նա, անընդհատ համբուրելով նրա փոքրիկ բռունցքը, որով նա խաղում էր մօր սպիտակ կրծքի հետ,—ես չեմ փոխի նոյն իսկ դրախտի թագուհու և ոչ մի հարստութեան հետ։ Հապա ի՞նչ պիտի անենք։

—Այո, բաններս վատ է։ Քո վերջին իւպկան ցնցոտի կը դառնայ շուտով,—նկատեց հայրը։—Ես, երևի, այս անգամ ստիպուած կը լինեմ բաւականանալու՝ առնելով մի որևէ կիսամաշ բան՝ անկիւնի բիձայից։

—Աւելի վատ է քո վիճակը, մանաւանդ սնունդի կողմից։ Մեր սնունդը չափից դուրս արդէն վատ է և անբաւարար քո ծանր աշխատանքի համար։

—Է՜հ, ջհանդամը սնունդը․ մի կերպ քարշ կը գամ,—վըճռեց Մանսօնը։

Նա անուղղելի լաւատես մարդ էր։ Յետոյ թքեց ձեռքերի վրայ, ծափ տուեց և, ձեռքի մի շարժումով բոլորելով սենեակի ներսը, նկատեց.

——Դրա փոխարէն, գոնէ երեխաներն են մեզ մնում։

—Մեծից մինչև փոքրը,——եզրափակեց մայրը և այնպէս ամուր սեղմեց ծծկերին, որ նրա կարմիր դէմքը բոլորովին թաղուեց մօր քնքուշ, առաձիգ և կաթնալի կրծքի մէջ։ Ապա ազատ ձեռքը մեկնեց ամուսնուն, և նրանց ազնիւ բանուորական ձեռքերը միացան իրար հետ մտերմական ամուր սեղմումով։

Լ. ԴԱՆԻԷԼԵԱՆ

# ԵՐԵՔ ԾԵՐՈՒՆԻ

(Լ. Ն. Տոլստոյի)

---

Նաւով Արխանգելսկ քաղաքից Սոլովկի էր գնում մի քահանայապետ։ Միաբանակեցների մօտ հէնց նոյն նաւով ուխտաւորներ էին գնում։ Քամին աջողակ էր, եղանակը՝ պարզ. չէր ճօճում։ Ուխտաւորները—որոնցից ոմանք պառկել էին, ոմանք նախաճաշում էին, ոմանք նստել էին խմբերով—զրոյց էին անում միմեանց հետ։ Դուրս եկաւ քահանայապետը նաւի վերնայարկը, սկսեց յետ ու առաջ քայլել կամուրջի վրայ։ Մօտեցաւ քահանայապետը նաւի քթին, տեսաւ՝ մի խումբ ժողովուրդ է հաւաքուել։ Մի գիւղացի ձեռքով մի ինչ-որ բան ցոյց է տալիս ծովում և խօսում է, իսկ ժողովուրդը լսում է։ Կանգնեց քահանայապետը, նայեց այն կողմը, ուր ցոյց էր տալիս գիւղացին. ոչինչ չի երևում, միայն ծովն է փայլում արևի տակ։ Աւելի մօտ գնաց քահանայապետը, սկսեց լսել։ Գիւղացին տեսաւ քահանայապետին, գլխարկը հանեց և լռեց։ Քահանայապետին տեսաւ և ժողովուրդը. նոյնպէս հանեցին գլխարկները, յարգանք մատուցին։

—Մի՛ քաշուէք, եղբայրներ,—ասաց քահանայապետը։—Ես էլ լսելու մօտեցայ. դու ի՞նչ ես պատմում, բարի մարդ։

—Դէ ահա ծերունիների մասին մեզ պատմեց ձկնորսը,—ասաց մի վաճառական համարձակօրէն։

—Ի՞նչ ծերունիների մասին,—հարցրեց քահանայապետը, մօտեցաւ նաւի եզրին և նստեց արկղի վրայ։—Պատմի՛ր և ինձ, ես էլ կը լսեմ. Դու ի՞նչ էիր պատմում։

—Ահա մի փոքրիկ կղզի է երևում,—ասաց գիւղացին և ցոյց տուեց առաջ՝ աջ կողմը։—Հէնց այդ փոքրիկ կղզու վրայ և ապրում են ծերունիները, քաւում են։

—Ո՞ւր է կղզեակը,—հարցրեց քահանայապետը։

—Ահա իմ ձեռքի ուղղութեամբ համեցէք նայել. ահա ամ-

պը, այդպէս նրանից մի քիչ ձախ, ցածրում շերտի պէս երեւում է։

Նայեց, նայեց, նայեց քահանայապետը՝ ծածանում է ծովը արևի տակ, և առանց սովորոյթի ոչինչ չի երևում։

—Չեմ տեսնում,—ասաց։—Ախր ինչպիսի ծերունիներ են ապրում կղզու վրայ։

—Աստուծոյ մարդիկ,—պատասխանեց գիւղացին։ —Վաղուց արդէն ես լսել էի նրանց մասին, բայց չէր աջողվում տեսնել. իսկ ահա անցեալ ամառ ինքս տեսայ։

Եւ սկսեց նորից պատմել ձկնորսը, թէ ինչպէս գնացել է ձկան համար և ինչպէս տարուել է դէպի այդ կղզին, և ինքը չէ իմացել, թէ որտեղ է նա։ Առաւօտեան գնացել է ման գալու և մօտեցել է մի խրճիթի ու տեսել խրճիթի մօտ մի ծերունու, իսկ յետոյ դուրս են եկել և էլի երկուսը, կերակրել և չորացրել են նրան և օգնել են մակոյկը նորոգելու։

—Ի՞նչպիսիներն են նրանք,—հարցրեց քահանայապետը։

—Մէկը՝ փոքր, կորացած, բոլորովին հինաւուրց, հին փարաջայով, պէտք է որ հարիւր տարեկանից աւելի լինի. ալեհեր մօրուքն արդէն սկսել է կանաչել, իսկ ինքը միշտ ժպտում է, և պայծառ էր, որպէս երկնային հրեշտակ։ Միւսը հասակով աւելի բարձր, նոյնպէս ծեր, պատառոտուն շորերով, մօրուքը լայն, ալեհեր-դեղնաւուն, իսկ ուժեղ մարդ էր. իմ նաւակը շուռ տուեց իբրև տաշտ, չկարողացայ նոյնպէս օգնել նրան. նոյնպէս ուրախ էր։ Իսկ երրորդը բարձրահասակ, մօրուքը երկար՝ մինչև ծնկները և ճերմակ՝ ինչպէս լուսին, իսկ ինքը մռայլ, յօնքերը աչքերի վրայ են կախուած, և մերկ ամբողջովին, միայն փսիաթով է գօտկած։

—Ի՞նչ էին նրանք խօսում քեզ հետ,—հարցրեց քահանայապետը։

—Ամեն բան լռելեայն էին անում և իրար հետ էլ սակաւ են խօսում։ Մէկը նայում է, իսկ միւսն արդէն հասկանում է։ Սկսեցի ես բարձրահասակին հարցնել, թէ վաղո՞ւց է արդեօք, ինչ նրանք այնտեղ են ապրում։ Մռայլուեց նա, ինչ-որ ասաց, ասես բարկացաւ, և հինաւուրց փոքրիկն իսկոյն նրա ձեռքից բռնեց, ժպտաց, և նա լռեց։ Հինը միայն ասաց՝ «ողորմեա մեզ» և ժպտաց։

Մինչ գիւղացին խօսում էր, նաւն աւելի մօտեցաւ կղզիներին։

—Ահա այժմ ամբողջովին տեսանելի եղաւ,—ասաց վաճա-

ռականը։—Ահա համեցէք նայել, ձերդ սրբազնութիւն,—ասաց նա ցոյց տալով։

Քահանայապետն սկսեց դիտել։ Եւ իրօք տեսաւ մի սև շերտ—կղզեակը։ Նայեց, նայեց քահանայապետը և գնաց դէպի նաւի քիթը՝ դէպի ղեկը, մօտեցաւ նաւավարանին։

—Այդ ինչ կղզեակ է,—ասում է,—այդտեղ երևում։

—Է՛, այնպէս, անանուն։ Նրանք շատ են այստեղ։

—Ասում են, ձերդ սրբազնութիւն, բայց չգիտեմ՝ ճի՞շտ է արդեօք։ Ձկնորսներն ասում են, որ տեսել են։ Բայց լինում է նոյնպէս, որ զուր են խօսում։

—Ես ցանկանում եմ կղզու մօտ կանգնել, ծերունիներին տեսնել,—ասաց քահանայապետը։—Ի՞նչպէս անել այդ։

—Նաւով մօտենալ չի կարելի,—ասաց նաւավարը։—Մակոյկով կարելի է, բայց պէտք է աւագին հարցնել։

Կանչեցին աւագին։

—Ուզում էի տեսնել այդ ծերունիներին,—ասաց քահանայապետը.—արդեօք չի՞ կարելի ինձ տանել։

Աւագն սկսեց համոզել.

—Կարելին՝ կարելի է, բայց շատ ժամանակ կանցկացնենք, և՝ համարձակվում եմ յայտնել ձերդ սրբազնութեան՝ չարժէ նայել նրանց վրայ։ Լսել եմ մարդկանցից, որ բոլորովին յիմար ծերուկներ են ապրում. ոչինչ չեն հասկանում և ոչինչ խօսել չեն կարող, ինչպէս ծովային ինչ-որ ձկներ։

—Ես ցանկանում եմ,—ասաց քահանայապետը։—Ես կը վճարեմ ձեր աշխատանքների համար, տարէք ինձ։

Ի՞նչ արած։ Նաւաստիները կարգադրեցին, յարմարեցրին առագաստները։ Նաւավարը շուռ տուեց նաւը, լողացին դէպի կղզին։ Նաւի քթին աթոռ դրին քահանայապետի համար։ Նա նստեց և նայում է։ Եւ ամբողջ ժողովուրդը հաւաքուեց նաւի քթին, ամենքը դէպի կղզեակն են նայում։ Եւ ում աչքերն աւելի սուր են՝ արդէն տեսնում է կղզու վրայ քարերը և խրճիթն է ցոյց տալիս. իսկ մէկն արդէն երեք ծերուկին էլ տեսաւ։ Աւագը դուրս բերեց հեռադիտակը, նայեց նրա միջից, տուեց քահանայապետին։

—Իրօք,—ասում է,—ահա եզերքին, մեծ քարի շարքովը երեք մարդ են կանգնած։

Նայեց և քահանայապետը դիտակի միջից, ուղղեց ուր պէտք էր. իսկապէս կանգնած են երեքը՝ մէկը բարձրահասակ, միւսը մի քիչ կարճ, իսկ երրորդը բոլորովին փոքրիկ. կանգնել են ափին, ձեռք-ձեռք են բռնել։

Մօտեցաւ աւագը քահանայապետին.

—Այստեղ, ձերդ սրբազնութիւն, պէտք է կանգնեցնել նաւը։ Եթէ պէտք է՝ այստեղից դուք մակոյկով հաճեցէք գնալ. իսկ մենք այստեղ խարիսխ կը ձգենք։

Իսկոյն արձակեցին պարանները, խարիսխը գցեցին, իջեցրին առագաստները. նաւը տարուբերուեց, ճօճաց։ Իջեցրին մակոյկը, դուրս թռան թիավարները, և քահանայապետը սկսեց իջնել սանդուղով։ Քահանայապետը իջաւ, նստեց մակոյկում՝ նստարանին, թիավարները զարկեցին թիերը, լողացին դէպի կղզին։ Մօտ լողացին այնպէս, ինչպէս քարն են ձգում, տեսան՝ կանգնած են երեք ծերունի. բարձրահասակը՝ մերկ փսիաթով գօտկուած, կարճլիկը՝ պատառոտուն շորերով, իսկ հինը, կորացածը՝ հին փարաջայով. կանգնել են երեքը, ձեռք-ձեռք են բռնել։

Թիավարները մօտեցան ափին, մակոյկը կապեցին ցցին։ Քահանայապետը դուրս եկաւ։

Ողջունեցին նրան ծերունիները, նա օրհնեց նրանց. ողջունեցին նրան աւելի խոր։ Եւ սկսեց խօսել քահանայապետը։

—Ես լսեցի,—ասում է,– որ դուք այստեղ, Աստուծոյ ծերուկներդ, քաւում էք, մարդկանց համար Քրիստոս Աստուծուն աղօթում, իսկ ես, անարժան ծառաս Քրիստոսի, Աստուծոյ ողորմածութեամբ, Նրա հօտը հովուելու եմ կոչուած. այսպէս՝ ուզեցի և ձեզ, Աստուծոյ ծառաներիդ, տեսնել, և եթէ կարող եմ՝ խրատներ տալ։

Լսում են ծերունիները, ժպտում, մէկ մէկու նայում։

—Ասացէք ինձ, ի՞նչպէս էք դուք քաւում և ի՞նչպէս Աստուծուն ծառայում,—ասաց քահանայապետը։

Հոգոց հանեց միջնակ ծերունին և նայեց մեծին, հնին. խոժոռուեց բարձրահասակ ծերունին և նայեց մեծին ու հնին։ Եւ ժպտաց մեծ, հին ծերունին և ասաց.

—Չենք իմանում մենք, Աստուծոյ ծառայ, ծառայել Աստուծուն. միայն մեզ ենք ծառայում, մեզ կերակրում։

—Դուք ախր ի՞նչպէս էք Աստուծուն աղօթում,—հարցրեց քահանայապետը։

Եւ հին ծերունին ասաց.

—Մենք աղօթում ենք այսպէս. «Դուք երեք, մենք երեք. ողորմեա մեզ»։

Եւ հին ծերունին այդ ասաց թէ չէ՝ բոլոր երեք ծերունիներն էլ աչքները դէպի երկինք բարձրացրին և երեքն էլ ասացին.

--Դուք երեք, մենք երեք. ողորմեա մեզ։

Քահանայապետը ծիծաղեց և ասաց.

—Այդ դուք սուրբ Երրորդութեան մասին էք լսել, բայց դուք այնպէս չէք աղօթում։ Սիրեցի ես ձեզ՝ Աստուծոյ ծառաներիդ. տեսնում եմ, որ ուզում էք Աստուծուն հաճոյանալ, բայց չգիտէք՝ ինչպէս ծառայել Նրան։ Պէտք չէ այդպէս աղօթել. լսեցէք ինձ, ես կը սովորեցնեմ։ Ինձանից չէ որ պէտք է սովորեցնեմ ձեզ, այլ աստուածային գրուածքից կը սովորեցնեմ այն, թէ ինչպէս Աստուած հրամայեց բոլոր մարդկանց աղօթել Իրան։

Եւ սկսեց քահանայապետը բացատրել ծերունիներին, թէ ինչպէս Աստուած յայտնուեց մարդկանց. բացատրեց նրանց Հայր-Աստուծոյ, Որդին-Աստուծոյ և Հոգին Սուրբ Աստուծոյ մասին ու ասաց.

—Որդին-Աստուած եկաւ աշխարհ՝ մարդկանց փրկելու՝ և այսպէս աղօթել սովորեցրեց ամենքին։ Լսեցէք և կրկնեցէք ինձ հետ։

Եւ սկսեց քահանայապետն ասել.

—«Հայր մեր»։

Եւ կրկնեց մի ծերունին՝ «Հայր մեր», կրկնեց և միւսը՝ «Հայր մեր», կրկնեց և երրորդը՝ «Հայր մեր»։

—«Որ յերկինս ես»։

Կրկնեցին ծերունիները՝ «Որ յերկինս ես»։ Բայց բառերի մէջ շփոթուեց միջնակ ծերունին, այնպէս չասաց։ Չկարողացաւ արտասանել և բարձրահասակը, մերկ ծերունին. Նրա բեխերը բերանն էին մտել, չկարողացաւ մաքուր արտասանել։ Անորոշ մրթմրթաց և հին, անատամ ծերունին։

Մի անգամ էլ կրկնեց քահանայապետը, մի անգամ էլ կրկնեցին ծերունիները։ Եւ նստեց քահանայապետը քարերին, և Նրա մօտ կանգնեցին ծերունիները ու Նրա բերանին էին նայում և կրկնում էին Նրա հետ, ինչ որ Նա ասում էր Նրանց։ Եւ ամբողջ օրը մինչև երեկոյ չարչարուեց Նրանց հետ քահանայապետը. և տասն, և քսան, և հարիւր անգամ կրկնեց մի բառը, և ծերունիները կրկնում էին Նրա հետ։ Եւ շփոթում էին Նրանք, և Նա ուղղում էր Նրանց և ստիպում էր կրկնել նորից։

Եւ չհեռացաւ քահանայապետը ծերունիներից, մինչև որ չսովորեցրեց Նրանց ամբողջ Տէրունական աղօթքը։ Նրանք կարդացին Նրա հետ և կարդացին առանձին։ Ամենից առաջ հասկացաւ միջնակ ծերունին և ինքն ամբողջովին կրկնեց այն։ Եւ

հրամայեց քահանայապետը կրկին և կրկին անգամ ասել այն, և էլի կրկնել. և միւսները կարդացին ամբողջ աղօթքը։

Արդէն սկսեց աղջամղջել, և լուսինը սկսեց բարձրանալ ծովից, երբ քահանայապետը բարձրացաւ նաւը՝ գնալու համար։ Հրաժեշտ տուեց քահանայապետը ծերունիներին. բոլորը խոնարհուեցին նրան մինչև ոտները։ Նա բարձրացրեց նրանց ու ողջագուրեց իւրաքանչիւրին, հրամայեց նրանց աղօթել՝ ինչպէս ինքն էր սովորեցրել՝ և նստեց մակոյկն ու գնաց դէպի նաւը։

Եւ քահանայապետը մօտ գնաց նաւին և լսում էր դեռ, թէ ինչպէս ծերունիները երեք ձայնով բարձր կրկնում էին Տիրոջ աղօթքը։ Մօտեցաւ նաւին՝ անլսելի եղան ծերունիների ձայները. միայն լուսնի լուսով երևում էր՝ կանգնել են ափին, հէնց նոյն տեղում երեք ծերունի. մէկը, ամենից կարճը, մէջտեղում, իսկ բարձրահասակը՝ աջ և միջնակը ձախ կողմում։ Քահանայապետը մօտ գնաց նաւին, բարձրացաւ վերնայարկը. հանեցին խարիսխը, բարձրացրին առագաստները, քամին ուռցրեց նրանց, շարժուեց նաւը, և լողացին առաջ։ Անցաւ քահանայապետը դէպի ղեկը և նստեց այնտեղ ու միշտ նայում էր դէպի կղզեակը։ Սկզբում երևում էին ծերունիները, յետոյ ծածկուեցին. երևում էր միայն կղզին. յետոյ կղզեակն էլ անյայտացաւ, միայն ծովն էր խաղում լուսնի լուսով։

Ուխտաւորները պառկեցին քնելու, ամեն ինչ լռեց վերնայարկում։ Իսկ քահանայապետը չէր ուզում քնել. մենակ նստել էր ղեկի մօտ, նայում էր ծովի այն կողմը, ուր ծածկուեց կղզեակը, և մտածում էր բարի ծերունիների մասին, թէ ինչպէս ուրախացան նրանք, որ սովորեցին աղօթքը, և շնորհակալ եղաւ Աստուծուց այն բանի համար, որ Նա օգնութեան հասցրեց իրան Աստուծոյ ծերունիներին՝ ուսուցանելու նրանց Աստուծոյ խօսքը։

Այդպէս նստել է քահանայապետը, մտածում, նայում է ծովին, այն կողմը, ուր կղզեակը ծածկուեց։ Եւ նրա աչքերը խառնվում են. մերթ այստեղ, մերթ այնտեղ խաղում է լոյսն ալիքների վրայ։ Յանկարծ տեսնում է՝ մի ինչ-որ բան փայլում և սպիտակին է տալիս լուսնէ սեան մէջ. Թռչո՞ւն է արդեօք, ձկնկո՞ւլ, թէ՞ առագաստ է սպիտակին տալիս մակոյկի վրայ։ Մի լաւ նայեց քահանայապետը. «Մակոյկը,—կարծում է,—առագաստաւոր վազում է մեր ետևից. և շատ շուտ արդէն մեզ կը հասնի։ Հեռո՜ւ, հեռո՜ւ էր, իսկ ահա արդէն բոլորովին մօտ է երևում։ Եւ մակոյկը՝ մակոյկ չէ, առագաստի նման չէ։ Եւ

*վազում է մի ինչ-որ բան ու մեզ կը հասնի»։ Եւ քահանայապետը չի կարողանում որոշել, թէ ինչ բան է. մակոյկը՝ մակոյկ չէ, թռչունը՝ թռչուն չէ, ձուկը՝ ձուկ չէ։ Մարդու է նման, բայց շատ մեծ է, ախր չի էլ կարող մարդ ծովի մէջտեղում լինել։ Վեր կացաւ քահանայապետը, մօտեցաւ նաւավարին. «Նայիր,—ասում է,—ի՞նչ է այդ»։*

*—Ի՞նչ է այդ, եղբայր, ի՞նչ է այդ,—հարցնում է քահանայապետը, իսկ ինքն արդէն տեսնում է՝ վազում են ծովի վըրայով ծերունիները, սպիտակին են տալիս և փայլում են նըրանց ալեհեր մօրուքները, և ինչպէս կանգնողի՝ մօտենում են նաւին։*

*Նայեց նաւավարը՝ սարսափեց, գցեց ղեկը և կանչեց բարձըր ձայնով.*

*—Աստուած իմ. ծերունիները ծովի վրայով վազում են իբրև ցամաքի վրայով։*

*Լսեց ժողովուրդը, վեր կացաւ. ամենքը նետուեցին դէպի ղեկը։ Բոլորը տեսնում են՝ վազում են ծերունիները, ձեռք-ձեռք են բռնել. ծայրինները շարժում են ձեռներով, հրամայում են կանգնել։ Բոլոր երեքը ջրի վրայով, ինչպէս ցամաքով, վազում, վազում են և ոտները չեն շարժում։*

*Չկարողացան նաւը կանգնեցնել, երբ ծերունիները հասան նաւին, մօտեցան նաւի հէնց ծայրին, բարձրացրին գլուխները և խօսեցին միաբերան.*

*—Մոռացանք, ծառա՛դ Աստուծոյ, մոռացանք քո ուսմունքը։ Քանի կրկնում էինք՝ յիշում էինք. մի ժամով դադարեցինք կրկնելուց, մի բառ դուրս թռաւ՝ մոռացանք, բոլորը թափուեց։ Ոչինչ չենք յիշում, նորից սովորեցրու։*

*Խաչակնքեց քահանայապետը, կռացաւ դէպի ծերունիները և ասաց.*

*—Հասկանալի է Աստուծուն և ձեր աղօթքը, Աստուծոյ ծերունիներ։ Ես չեմ որ ձեզ պիտի ուսուցանեմ։ Աղօթեցէք մեզ՝ մեղաւորներիս համար։*

*Եւ երկրպագեց քահանայապետը ծերունիներին մինչև ոտները։ Կանգնեցին ծերունիները, շուռ եկան և յետ գնացին ծովի վրայով։ Եւ մինչև առաւօտ երևում էր լոյսն այն կողմից, ուր ծերունիները գնացին։*

*Թարգմ. ԱԽՊԷՐ*

---

# ԿԱՐԱ-ՕՂԼՈՒ *)

## (Հայ ասպատակի մը կեանքէն)

---

### ԳԻՐՔ Գ.

—

### III

### «Պառաւած հաւը»

*Կարա-Օղլու՝ գնդակահարուածի նման ետ տատանեցաւ։*

*—Պառաւած հաւը կրկին... Կարծեցի թէ Ալլահ շատոնց ի վեր առած էր զինքը։ Սակայն խելացի է, որ հանդիստ է թողած։*

*Տիկին մը Սվազի կողմէն դէպի իր կողմը կուգար ձիու վրայ։ Ոչ ժամանակը և ոչ սովորութիւնը փոփոխութիւն մը գործած էր վրան։ Դեռ ևս արտառոց հանդերձ մըն էր հագած։ Ձին միևնոյնն էր, թէև քիչ մը աւելի անկայուն ետևի սրունքներուն վրայ։ Միս Ուիլսընն էր, իր հմայքները փոքր ինչ հասունցած՝ ժամանակի օժանդակութեամբ և միտքը ընդլայնած՝ շնորհիւ Նիւ-Եօրք կատարած քանի մը ատենաբանութեանց «հայկական հարցին» վրայ։ Ուրիշ ամէն կերպով անփոփոխ էր, և տակաւին փնտռելու ետևէ մէկը՝ որ իր երիտասարդ սիրտը և ռոմանտիկ երևակայութիւնը գնահատէր։ Մէկէ աւելի սիրահարներ ինկած էին ոտքը, բայց հրամայուած վեր բարձրանալ։ Որովհետև մերօրեայ (մօդէրն) ամուսին չէր ուզեր, այլ մէկը, որ կարենար քիչ մը ռոմանս տալ կեանքին, միջնադարեան ու ռոմանտիկ, ասպետական ու արիւն եռացնող բան մը։ Միս Ուիլսընի Կարա-Օղլուի հետ ունեցած արկածները*

---

*) «Արօր» 1910 թ. №№ 6—7, 8—9— 10, 11, 12, և 1911 թ. №№ 1, 2—3, 4 և 5—6.

ազդած էին իրեն և զինքը անորոշ կացութեան մը դատապարտած։ Օր. Ուիլսըն դեռ ևս կը յամառէր հաւատալ, որ հայ ասպատակը արժանիքը չճանչցուած արևելեան իշխանիկ մըն էր, որ միջոց մը կը փնտռէր իր բուռն սէրը արտայայտելու։ Իր ռոմանտիկ երևակայութիւնը կը սիրէր տեսնել Կարա-Օղլուն իր անձնանուէր հայրենասէրներով շրջապատուած՝ այդ կողմերը դեգերելով իրեն հանդիպելու առիթի մը ակնկառոյց։ Այս պարագային, սակայն, զապթիէները, որոնք յանձնուած էին միս Ուիլսընի՝ զինքը մինչև Սվազ հասցնելու, անկարելի կը դարձնէին սոյն ակնկալութիւնը։

Իր երկու շաբաթ միսիոնարներու տունը մնացած միջոցին ամեն ինչ ու ամեն ոք տակն ու վրայ էր ըրած, առանց բան մը շինելու։ Արդիւնքը այն էր եղած, որ պատ. Ալփէոս հրաժարական տալու խօսքեր կընէր և Երասդոսի գալստեան կը սպասէր՝ այդ մասին խորհրդակցելու։ Իսկ միևնոյն ժամանակ միս Ուիլսըն «Տեղեկագրութեան» համար լուրեր կը հաւաքէր և շրջակայքի «հոգիները» կը դասաւորէր։ Յիրաւի, չորս նորադարձներ գնելու աստիճան յառաջ էր գացած՝ լոկ պատ. Ալփէոսը նեղացնելու համար։ Նա շատ լաւ գիտէր, թէ միս Ուիլսընի մեկնումէն անմիջապէս յետոյ անոնք կրկին իրենց նախահարց հաւատքին պիտի դառնային. բայց՝ անշուշտ միս Ուիլսըն կը փափաքէր ցոյց տալ շարք մը ամերիկեան թերթերու մէջ, որ, իր ժամանումէն շաբաթ մը վերջ, շնորհիւ իր ջանքերուն, քանի մը օրուայ ընթացքին ինք շատ աւելի գործ կատարած էր, քան անոնք՝ տարուան մը մէջ։ Պատ. Ալփէոս շատոնց ի վեր համոզուած էր այն թէօրիին, որ լաւագոյն բանը կարենալ ընելը հայ ցեղին՝ անոր մանուկները դաստիարակելն էր։ Բոլոր հայերը այնքան ճարպիկ, մտաւորապէս այնքան ճկուն և դիւրափոփոխ են, որ հաճոյք մըն էր իրեն տեսնել, թէ ինչպէս արագօրէն կորդեգրէին անոնք արևմտեան քաղաքակըրթեան հիմնական ճշմարտութիւնը ու կը գործադրէին ատոնք իրենց ու իրենց շրջակայքին վրայ։ Շատ լաւ գիտէր, թէ իր protégé-ներէն ոմանք, հասուննալով, Ամերիկա երթալու դրամ փոխ կառնէին և հոն հասնելով՝ ամերիկեան միսիոնարներու Փոքր Ասիոյ մէջ ունեցած թերութեանց վրայ կը դասախօսէին ամերիկացիներուն. սակայն կը մխիթարէր ինքզինքը այն մտածումով, որ թէև հայկական քաղաքակրթութեան այս ռահվիրաները մտադրութիւն ունէին իրենց Սվազ վերադարձին զինքը patronise ընել, բայց Ամերիկան յարմար առիթներ կունենար դատելու մտաւոր կարողութիւնն ու նրբութիւնը (finesse) ցեղի

մը, որ աշխարհի պատմութիւնը գրի առնուելէն ի վեր նշանակելի եղած է։ Հետևաբար կը շարունակէր ուսուցանել և աղօթել, առանց իր կողմէն միս Ուիլսընի հակառակորդ նորադարձներ գնելու։ Քաղաքական որոտում կար օդին մէջ. հունձքերը նուազ էին. և նոյն հայրենասէրներն անգամ ուտել կուզէին, իրենց կիներն ու զաւակները հոգացում՝ եթէ կարելի է։ Այն փութկոտութիւնը, որ հայ ցեղը ցոյց տուած էր գետնախնձորը որդեգրած պահուն, վստահեցուցած էր զինքը, թէ միևնոյն հանգամանքը կարելի էր վերագրել և այլ առաւել էական խնդրոց, պայմանաւ որ Թիւրքական ուրիշ կոտորած մը հայութիւնը չսրբէր աշխարհի երեսէն։

Մինչ միս Ուիլսըն իրեն կողմը կուգար, Կարա-Օղլու, որ տակաւին զապթիէի ծպտումով էր, աճապարանօք վարը մացառներուն մէջ գնաց։ Վեց հրոսակներ, գլխովին զինեալ, շուրջը բոլորուեցան. իրենց ձիերը քիչ մը հեռուն ծառի մըն էին կապուած։

—Յիմար ամերիկացի կինն է,--բացատրեց անոնց։—Պառաւած հաւը։ Եկած է բարեկամները դիմաւորել։ Հինգ րոպէ ունինք ինչ ընելիքնիս որոշելու։ Հարուստ է, սակայն այս խռովեալ ժամանակին փրկանք առնելու յոյս չկայ։ Կրնան մեզի հալածել։

—Պահենք զինքը քարայրը, ո՜վ Կարա, մինչև որ այս միւսիւլման շուներուն վիզերը կտրենք,—եռանդունօրէն թելադրեց խմբապետը։

—Ի՞նչ օգուտ այդ,—գոչեց Կարա-Օղլու արհամարհոտ։—Քարայրը հանրածանօթ է. առաջին տեղն է որ կը խուզարկեն։ Եթէ միայն կարողանայինք անգլիացի երիտասարդը բռնել։ Քանի մը օր առաջ առիթն ունէի սպաննելու, սակայն ապահով չէր։ Ա՜հ-հ-հ... Գտայ...

Շարք մը փութկոտ հրահանգներ տուաւ, և երկու րոպէ վերջ մէկը չկար. բոլորն ալ, կարծես մոգական ոյժով, անհետացեր էին։ Անմիջապէս որ միւսները պահուեցան, Կարա-Օղլու իր ծպտումին վրայ մի քանի յղկումներ գործելով ցատկեց գողցած ձիէն տարբեր երիվար մը և յառաջ ինկաւ՝ «ծերուկ հաւը» դիմաւորելու։

Առաւօտեան կանուխ լուր հասած էր միսիօնարական բնակարանը, թէ Ֆէնէլա ու Երասդոս ժամը 2-ին Սվազ պիտի հասնէին։ Այսպէս, մինչ պատուելի Ալփէոս և միւսներ խորհրդակցութիւն կընէին եկուորները դիմաւորելու լաւագոյն եղանակին վրայ, և ինչպէս բաւականաչափ ձի պիտի գտնէին

բոլորին համար (նոյն հայ աղախինը անգամ խնդրած էր ընկերակցիլ իրենց իշու մը վրայ՝ մանուկով միասին), միս Ուիլսըն դուրս էր սողացած և հրամայելով իր նորադարձներէն մէկուն նժոյգը համետել՝ ճամբայ ելած էր Երասդոսն ու Ֆէնէլան դիմաւորելու։ Ազգականներու և մերձաւորներու բազմութեան մէջ ոչ մէկն էր ինք. բայց եթէ կանխօրօք, միւսներէն առաջ, դիմաւորէր Երասդոսն ու Ֆէնէլան, կրնար ազդել անոնց վրայ իր անձին կարևորութիւնը և վերջին շաբաթուայ գործունէութիւնը պատմել։

Այս դժխեմ ծրագրին առթած հաճոյքով արբշիռ, միս Ուիլսըն բոլորովին անտեսած էր իր առած ընթացքին վտանգները։ Վերջին երեք օրերը կոտորածով և կոտորածի տարաձայնութիւններով լեցուած էր մթնոլորտը։ Հայերը անասունի նըման կը ջարդուէին Հալէպ, Այնթապ, Բիրէջիկ, Ուրֆա, Դիարբէքիր։ Սվազի մէջ ամէնքը կը զինուէին։ Խարբերդի մէջ միսիօնարական շէնքերը թալանուած էին. զէյթունցիք զինուած ոտքի էին. Տէրսիմի քիւրդերը Եփրատի հարաւային սահմանը անցնելով՝ Արաբկիրի շրջանը կաւերէին. Ակն, Բերի և Բալու քարուքանդուած էին. հազարաւոր հայեր սպաննուած ու աւերուած էին, կիներ բռնաբարուած և անծին մանուկներ մորթուած։ Ձին հեծած պահուն միս Ուիլսըն մտքին մէջ Ամերիկեան Միսիօնարական Պօրտին գրելիք տեղեկագրութեան ընդհանուր գիծերը կը կազմէր, մերթ կողմնակի դէպքեր ևս աւելցնելով՝ իր անձնական հերոսութիւնը մատնանշող։ Նոյն այս զարհուրելի մորթոտման, սպանութեան և անդամահատման լուրերն իսկ—այս անպատիւ փորձն՝ ոչնչացնելու հպատակ ցեղ մը՝ որովհետև զէնքը հալածողներէն աւելի մտաւոր ընդունակութիւն ունէր—տեսակ մը երախտագիտական զգացում կարթընցնէր իր մէջ, որ ամերիկեան հասարակութեան վերջնագոյն լուրերը հաղորդելու վիճակի մը մէջ կը գտնուէր։ Դըժբախտօրէն իրեն համար, իր նկարագրած ահռելի տեսարաններէն և ոչ մէկուն ականատես եղած էր։ Երբ մինչև իսկ վտանգը մօտ էր, կնոջ անհաւատալի եսասիրութիւնը իր սիրտը առանց յուզումի թողուց։ Եթէ տեսնէր փոքր մանկանց գազանային ջարդը, կանանց և աղջկանց չարչարանքը, ծերերու անսիրտ սպանումը, բոցերը, անօթութիւնը, ցուրտը, վախի ու սովի երկար օրերն ու գիշերները, թերևս լար և աղօթէր Աստուծոյ, որ իր հրեշտակները հրեղէն սուրերով վար ղրկէր՝ թիւրքերը բնաջնջելու և զանոնք աշխարհի երեսէն մաքրելու։

*Սակայն ատոր գեղազարդ կողմը միայն կը ներկայանար իր եսապաշտ երևակայութեան։*

*Յարմար ֆրազներ պատրաստելով մտքին մէջ և երբեմն «նժոյգը» գրգռելով՝ իր անկարևոր խթանումով, միս Ուիլսըն դանդաղօրէն յառաջ կը վարէր, գերապանծօրէն գոհ իրմով և իր առաքելութիւնով աշխարհի մէջ։ Թուփերու ապաստանը համնելուն՝ գեղեցիկ արաբական մը մօտեցաւ իրեն։ Կարա-Օղլու գիտէր ինչպէս հեծնիլ։ Սակայն երբ միս Ուիլսըն տեսաւ, թէ մօտեցող ձիաւորը հասարակ զապթիէ մըն էր, չհետաքրքրուեցաւ։ Նա կուզէր Կարա-Օղլուին հանդիպիլ պերճապաճոյճ զգեստներով ու անոր յաւիտենական նուիրման վաւերացումն ստանալ։*

*Ձիաւորը քիչ մը ևս յառաջանալով կանգ առաւ։ Միս Ուիլսըն, նոյն անկանացի նկատուելու ըխկով, հեծաւ անցաւ։*

*—Ի՞նչպէս էք, միս Ուիլսըն,—հարցուց Կարա-Օղլու, անգամ մը ևս անգլիական քաղաքակրթութեան Ջօզէֆ Բլէքը դառնալով։*

*—Հաճոյքը չունիմ,—կակազեց միս Ուիլսըն։—Ձեմ... այսինքն... կընամ պր. Օղլուն ըլլալ։*

*—Այո՛,—պատասխանեց Կարա-Օղլու, հոյակապ մեծամտութեամբ մը համետին վրայ խոնարհելով։*

*—Բայց ի՞նչ կընէք հոս։ Ճամբաները վտանգաւոր է։ Փախէք։ Կը խնդրեմ ձեզ փախչիլ...*

*—Անօգուտ է,—ըսաւ Կարա-Օղլու։--Մի կարծէք թէ, միս Ուիլսըն, որովհետև իմ երկրիս թշնամիներուն հանդէպ եմ հագած, մոռցած եմ իր դատը։ Ծպտուած եմ ձեզ դիմաւորելու համար։*

*—Ձեմ... չեմ հասկնար,—թոթովեց միս Ուիլսըն։*

*Կարա-Օղլու արագ նայուածք մը ուղղեց տափարակին կողմը։*

*—Թերևս լսած չէք դուք, սակայն հայրենիքս մահապարտուած է,—ըսաւ իրական զգացմամբ։—Այդ վախկոտ շուները, անգլիացիք, չեն միջամտեր մեզ փրկելու. բոլոր հիւպատոսները իրարու դէմ կը կռուին։ Հետևանքն այն է, որ պիտի բնաջընջուինք։ Տեղեկագրութիւններ ստացայ այս առաւօտ։—Գրպանէն թուղթերու ծրար մը հանեց։—Միևնոյն լուրերը ստացայ Հայաստանի բոլոր կողմերէն։ Երէկ Հայաստան մը կար։ Այսօր Հայաստան չկայ։ Հայ ցեղը ոչնչացած է։ Ով որ ազատի, յաջորդ ձմեռ պիտի սովամահ ըլլայ, որովհետև պետութիւնները չեն կընար իրենց փոխադարձ նախանձները կարգադրել և մեզ*

համար ինքնավարութիւն և ապահովութիւն ձեռք բերել։ Մենէ մի քանին մնացած է հաշիւները մաքրելու, սակայն շատ քիչերը։

—Բայց ինչո՞ւ հոս էք,— հարցուց միս Ուիլսըն, նուազօրէն ըմբռնել սկսելով՝ թէ զարհուրելի դէպքեր էին պատահած, և իր կանացի զգացման զարթնումին մէջ՝ մոռնալով պահ մը միսիոնարական տեղեկագիրները։—Ինչո՞ւ հոս էք։ Ինչո՞ւ Ռուսաստան չէք փախչիր և ինքզինքնիդ ազատեր։

—Սահմանագլուխը հսկուած է,—յայտնեց Կարա-Օղլու, զանց ընելով յիշել որ՝ չէր ուզեր սահմանագլուխը ճեղքել, մինչև որ Ֆէնէլայի աղամանդները չգտնէր։

Միս Թրէսօքի սպանումէն վերջ՝ չէր յանդգներ Անգլիա մտնել։ Որքան դրամ որ կրցած էր մէկ կողմ դնել իր ընկեր յեղափոխականներէն գաղտնի, հոն էր պահուած, բայց կարող չէր պահանջել։ Ռուսաստան կրնար սովամահ ըլլալ։ Եթէ կերպով մը դրամ ձեռք չբերէր, կացութիւնը յուսահատական էր։ Դրամի տիրանալ և Երասղոսի վրայ վրէժ լուծել՝ այդ բոպէին միտքն զբաղեցնող երկու կէտերն էին։ Միս Ուիլսըն կրնար երկու տեսակէտով ալ օգտակար հանդիսանալ։

—Լսեցի թէ դուք հոս էիք,—ըսաւ Կարա-Օղլու, իմաստալից նայուածք մը ուղղելով իր կարմիր-թուխ աչքերէն։

—Բայց…

—Ինձմէ այնքան աճապարանօք փախաք,—ըսաւ հայը,— որ առիթը չունեցայ բացատրելու այնպիսի բաներ, որ այդ պահուն ձեզի բոլորովին տարօրինակ երեցած ըլլալու են։

—Ճիշտ է։ Վստա՞հ էի, թէ դուք կրնայիք բացատրութիւն մը տալ,—պատասխանեց միս Ուիլսըն։—Ըսէ ինծի, մեծ խըմբապետ, քարայրին վրայ յարձակմանդ իրական շարժառիթը։

Կարա-Օղլու աչքերը խոնարհեցուց և սկսաւ ջղայնօրէն ձիու բաշին հետ խաղալ։ Ժամանակը կանցնէր։

—Հարկ կա՞յ ըսելու թէ՝ դուն էիր։

—Գիտէ՜ի… Վստա՛հ էի ատոր, — գոչեց միս Ուիլսըն հրճուալից։—Ֆէնէլային ալ ըսի այդ. Երասղոսին ալ յայտնեցի. բայց անոնք վրաս խնդացին։ Ըսին թէ՝ զիս «պառաւած հաւ» կը կոչէիր։

—Դո՜ւ… Պառաւած հա՜ւ… Եւ դու հաւատացի՞ր այդպիսի տխմարութեան, այդպիսի անհաւատալի ստու…

Գերազանց էր սա։

—Գիտէի թէ կրնայիր բացատրութիւն մը տալ։

—Կրնամ ամէն ինչ բացատրել։

—Եւ մեզ համար հարկ չկա՞ր այդպէս փախչելու։

—Երբէք։ Զիս մեծապէս վշտացուց։ Չէք գիտեր, թէ ո՛ր աստիճանի վշտացուց զիս։ Վստահութեան այդպիսի՛ չգոյութիւն...

—Շատ կը ցաւիմ։

Կարա-Օղլու թերահաւատ երեւցաւ։

—Ա՜հ, բառե՛ր, բառե՛ր, բառե՛ր...

—Փորձէ՛ զիս,—գոչեց միս Ուիլսըն խանդավառ։—Եթէ գիտնայի՛ր թէ՝ որքան վստահ էի, որ անիրաւած էին քեզ, թէ ինչպէս միշտ քու կողմնակիցդ եմ եղած. քսակը...

—Ա՜հ, այո, քսա՛կը... Զիս հասարակ գող մը նկատեցիք,—շարունակեց ստահակը։—Երբ իմ դժբախտ հայրենակիցներս բարձրաձայն դրամ կը պոռային, դուք զիս հասարակ գողի մը տեղ ընդունեցիք և դժկամակեցաք մի քանի լիրան՝ որ զիրենք սովամահութենէ կը պաշտպանէր։

Իր ասպանդակով ձիուն դիպաւ։

—Մնա՛ս...

—Կեցի՛ր,—ճչաց միս Ուիլսըն վշտահար։

Կարա-Օղլուի առ երեւոյթս մելամաղձութիւնը հաճելի զգացում մը շնորհած էր իրեն. ամեն տարակոյս փարատեց մէջէն։

—Կեցի՛ր։ Ի՞նչ կրնամ ընել քեզ՝ իմ քու վրադ ունեցած հաւատքս ցոյց տալու։

Կարա-Օղլու երիվարին սանձը քաշեց։ Ժամանակը կը տանէր։

—Եթէ միա՛յն կարողանայի անձամբ բացատրել այդ երիտասարդ անգլիացիին որ՝ ես գռեհիկ աւազակ մը չեմ, այլ կրթուած հայ ջէնթլմէն մը, Օքսֆորդ ուսած։ Այսուհանդերձ անկարելի է։

—Ինչո՞ւ։ Ո՜հ, ինչո՞ւ։ Ես անշուշտ կրնամ ճար մը գտնել։

—Շատ պարզ պատճառով,—յայտնեց Կարա-Օղլու։—Այժմ կուգայ ան. սակայն հետը բազմաթիւ զապթիէներ կան։ Կրնան սպաննել զիս կամ Թիւրքերուն ձեռքը յանձնել։ Չէք գիտեր, թէ որքան կը փնտռուիմ ես Թիւրքերէն։

—Ո՛չ միայն Թիւրքերէն,—վարանոտ կերպով մրմնջեց միս Ուիլսըն։

Կարա-Օղլու հառաչեց։

—Եթէ մնամ՝ պիտի գնդակահարուիմ։ Եթէ միայն կարողանայի առանձնապէս խօսիլ պր. Մարշըլի, կրնայի համոզել զինքը թէ՝ որքան սխալ դատած է զիս։ Սակայն անկարելի է։ Մնա՛ս բարեաւ։ Հարկ չկայ կրկնել թէ՝ որքան ուրախ եմ քեզ

նորէն տեսնելուս։ Ճամբուս միակ լուսեղէն շաւիղն ես եղած։ Քարայրի հանդիպումէն ի վեր, կեանքիս բաղձանքը եղած էր անգամ մը ևս տեսնել քեզ։ Պիտի յիշեմ քեզ, երբ կառավարչին առջև քաշկռտուիմ՝ մահուան դատապարտուած։ Քու անունդ վերջինը պիտի ըլլայ շրթներուս վրայ։ Երբեք պիտի…

—Կեցէ՛ր, կեցէ՛ր,—խնդրեց միս Ուիլսըն, իր վախերը հանդարտած։

Ճշմարիտ նուիրում էր սա։ Մարդը ոչինչ կը պահանջէր, ոչինչ կը փնտռէր, բայց ինքզինքին համար կը սիրէր միայն։

—Ուզածդ կրնամ ընել։ Շատ պարզ է։ Կը տեսնեմ որ կէս մղոն հեռու են։ Միակ բանը, որ ունիմ ընելու, այս թուփերուն եզերքը կանգնիլ ու թաշկինակս շարժել է։ Երասդոս սրընթաց հոս կը փութայ, և այն ատեն դու առիթ կունենաս ինքզինքդ բացատրելու։

—Ա՜հ, սակայն հակառակորդ մը կանչել քեզ դիմաւորելու,—գոչեց հայը, յառաջ ծռելով և կրայոյզ կերպով տիկնոջ ձեռքը համբուրելով։

—Կրնաս վստա՞հ ըլլալ, որ բոլորովին պաղօրէն կը վարուիմ հետը,—ըսաւ միս Ուիլսըն։—Թերևս լաւագոյն է որ հոս իջնեմ և թաշկինակս այնպէս շարժեմ։ Եթէ ձիու վրայ տեսնէ զիս, գուցէ զարմանայ, թէ ինչո՛ւ իրեն չեմ երթար, և, անշուշտ, եթէ զապթիէները տեսնեն քեզ, կրնան հետապնդել։

Կարա-Օղլու ձիէն վար սողաց։

—Ո՞վ կը խորհէր, թէ պառաւած հաւը այսքան խելք ունենար,—մրմնջեց ինքնին։

Ապա մօտեցաւ միս Ուիլսընի, առաւ զանի թևերուն մէջ ու անոր վտիտ մարմինը պնդօրէն կուրծքին սեղմելով՝ թուփերուն եզերքը տարաւ։

Այդ պահուն էր որ Երասդոս տեսաւ թէ՝ միս Ուիլսըն խելայեղօրէն թաշկինակը կը տատանէր։ Հեռաւորութեան պատճառաւ ով ըլլալը չկրցաւ զանազանել։

—Կին մը միայնակ…,—գոչեց։—Բան մը յինելու է, Ֆէն։

Ֆէնէլա իր դաշտադիտակով կը նայէր։

—Միս Ուիլսըն է,—ըսաւ։ Մեզ դիմաւորելու է եկած։

—Երթամ տեսնեմ թէ ինչ կայ։ Թերևս ձիուն դէպք մը պատահած է կրկին։ Եթէ հարիւր տարի ալ ապրի, ձի նստիլ պիտի չսորվի։ Զապթիէները մօտդ պահէ. կրնայ ըլլալ որ քիւրդերը յարձակում գործեն։

—Զգո՛յշ եղիր,—ըսաւ Ֆէնէլա։

Բայց Երասդոս, որ նորէն տուն վերադարձին առթիւ խանդավառօրէն գրգռուած էր, սուրաց։

Մինչ կը մօտենար, միս Ուիլսըն քանի մը քայլ ետ թուփերը նահանջեց։ Երասդոս խիզախօրէն յառաջ անցաւ։

—Միս Ուիլսըն,—սկսաւ,—ի՞նչ բանի կը պարտիմ այս անակնկալ...

Թփաստանէն վեց հոգի դուրս խուժեցին և զէնքը ձիէն վար քաշեցին։ Կարա-Օղլու իբր թէ փրկութեան նպատակով դուրս նետուելով՝ միևնոյն բախտին արժանացաւ։

—Փախի՛ր, փախի՛ր,—գոչեց միս Ուիլսընի։—Անոնք չեն համարձակիր քու վրադ կրակել։

Առաւել քան երբէք համոզուած անոր նուիրման, միս Ուիլսըն ճիչ մը արձակելով՝ խոյս տուաւ։ Իր հեռացումէն անմիջապէս յետոյ սրիկաները քակեցին Կարա-Օղլուն, կրկին զետեղեցին Երասդոս ձիուն վրայ, կապեցին ոտքերը փորին տակ և իրենց ձիերն ալ բերելով հեռացան։

Երբ Ֆէնէլա, զապթիէներուն հետ, եկաւ յիշեալ վայրը, մի քանի կոտրած ճիւղեր միայն մատնեցին անցեալ պայքարը։

—Ինչո՞ւ չէք հետևիր անոնց,—խնդրեց օրիորդը։

Տանուտէրը ուսերը շարժեց։

—Քիւրդեր են,—ըսաւ, վար ծռելով և ոտքի հետքերը քննելով։—Անապահով է անոնց վրայ արշաւել՝ առանց վալիի թոյլտուութեան։ Պէտք է Սվազ երթանք։

Կեանքին մէջ առաջին անգամն ըլլալով միս Ուիլսըն լուռ մնաց։

—Ինչո՞ւ ձիէդ վար իջար և այդ այլանդակ եղանակով թաշկինակդ ծածանեցիր,—հարցուց Ֆէնէլա վշտահար։—Կարա-Օղլո՞ւն էր հոն։ Մինա՞կ էիր։

—Ձեր գալը տեսայ։ Եկայ ձեզ դիմաւորելու։ Վար իջայ ձիէս՝ հանգստանալու։ Ապա, երբ կը մօտենայիք, թաշկինակս շարժեցի,—ըսաւ միս Ուիլսըն։

Ֆէնէլա հետախոյզ նայուածք մը ուղղեց։

—Մինա՞կ էիր,—հարցուց, երկրորդ անգամն ըլլալով։

—Ա...յո...,—ըսաւ միս Ուիլսըն։ — Ի՞նչ ըրի որ հետս այդպէս անազնիւ կը վարուիս, Ֆէնէլա։

—Կը ստե՛ս,—պատասխանեց Ֆէնէլա ցած վայրագ շեշտով մը։—Եթէ բան մը պատահի Երասդոսի, պիտի չներեմ քեզ երբէք։ Երբէք։ Երբէք։ Երբէ՜ք...

Նշան մը Քինի կողմէ՝ Թոմփսըն ձին Ֆէնէլայի մօտեցուց։

—Ես պիտի գտնեմ զինքը,—ըսաւ բանաստեղծը հաստատակամ։

—Դո՛ւ,—գոչեց օրիորդը զարմացկոտ։—Բայց դու չես կրնար տեսնել։

Բանաստեղծը ժպտեցաւ։

—Թոմփսըն հետս կուգայ, եթէ այս ստահակները չեն զար։ Այնպէս չէ՞, Թոմփսըն։

Թոմփսըն կողմնակի նայուածք մը ուղղեց զապթիէներուն, ակռաները սեղմեց ու ըսաւ.

—Անշուշտ, տէր իմ։

—Ես ալ պիտի գամ,—ընդմիջեց Ֆէնէլա։

—Դու պէտք է Սվազ երթաս,—ըսաւ կոյր պուէտը զըւարթօրէն։—Մի վախնար մեր մասին, օր. Ֆրոմ։ Մենք անգլիական հպատակներ ենք և ոչ մէկը կը համարձակի փնասել մեզ։ Ձեռք թօթուենք ու բաժնուինք։ Յետոյ կը գտնենք ձեզ։

—Սակայն մի քանի զապթիէ առէք հետերնիդ,—պաղատեցաւ Ֆէնէլա։

Զապթիէները բոլորն ալ մերժեցին ընկերակցիլ Քինի։

—Ժամանակ կը կորսնցնենք,—ըսաւ արտօրանօք։—Թոմփսըն կը հետևի ստահակներուն. և եթէ Կարա-Օղլու մէջերնին է, անգլիերէն կը խօսի ան, որով դիւրաւ կրնամ հասկցնել։

—Ես ալ պիտի գամ,—կրկնեց Ֆէնէլա վճռակամ։

—Բոպէ մը առանձին թող մեզ, Թոմփսըն,—ըսաւ Քին։—Օրիորդ Ֆրոմի խօսիլ կուզեմ։

Թոմփսըն մեկուսացաւ։

—Ա՛րդ, միս Ֆրոմ, դու ատեն մը կը վստահէիր վրաս,—յայտնեց Քին։—Մինչև այժմ լոկ խոչընդոտ մը եղայ ես։ Եթէ բռնեմ այդ սրիկաները, կրնամ հետերնին պայմանագրութեան մը գալ։ Պր. Մարշըլ անտարակոյս թակարդուած է։ Եթէ բան մը պատահի անոր, այնուհետև բնաւ երջանիկ չես կրնար ըլլալ դուն։

—Ո՛չ,—պատասխանեց Ֆէնէլա, դողդոջուն շրթներով և գունատ այտերով։—Երբէք երջանիկ չեմ կրնար ըլլալ կրկին։

—Անշո՛ւշտ։ Գնա՛ ուղղակի Սվազ. պր. Մարշըլի միջոցով կառավարիչէն շարք մը կանոնաւոր զօրքեր առ, և շուտով հետևեցէք մեզ։ Կրնայ ըլլալ, որ փրկանքի խնդիր ըլլայ լոկ. բայց եթէ անմիջապէս չհետևինք գազաններուն, հետքերնին կը կորսնցնենք։ Ուրեմն ժամանակ չվատնենք։ Աս այժմ՝ մնաս բարեաւ։

—Շնորհակալութիւնս յայտնելու բաւական ույժ չունիմ,—

ըսաւ. Ֆէնէլա, ցաւով սրտաբեկ։—Ինչո՞ւ հոս եկանք երբէք։ Լաւագոյն էր թողուլ, որ միս Թրէսօքի մարդասպանը փախչէր։ Ինչո՞ւ եկանք…

Քին ձեռքը երկարեց ու աղջկանը պահ մը երկար պահեց իրենին մէջ։

—Եկանք որ քեզի թեթեւ ծառայութիւն մը մատուցանելու կարող ըլլամ,—ըսաւ ան, մեղմօրէն։—Քեզ ճանչնալէս ի վեր՝ փափաքած եմ դոյզն ծառայութիւն մը մատուցանել քեզի։ Մընաս բարեա՛ւ, Ֆէնէլա։ Օր մը կը հասկնաս, և… կը մոռնաս այն յիմարութիւնը, որ… Բայց թողո՛ւնք այդ հիմա…

Ու նախ քան ապշահար օրիորդին բաւականաչափ ուշաբերումը, զապթիէները շրջապատեցին զինքը և Սվազ առաջնորդեցին։

Քին սուլեց Թոմփսընի։

—Սպասէ մինչև որ անոնք հեռանան։ Ըսէ ինծի երբ աներևութանան։

—Գացին, տէր իմ,—յայտնեց ծառան պահ մը յետոյ։

Քին ձեռքը կարկառեց։

—Մնա՛ս բարով, Թոմփսըն։ Երբ Անգլիա վերադառնաս՝ փաստաբաններուս գնա՛։ Անոնք պիտի հոգան քեզի։ Այժմ հեծիր ու միւսներուն հետևէ։

—Ինչո՞ւ, տէր իմ։ Դուք ո՞ր կողմը կերթաք,—հարցուց շըւարած սպասաւորը։

—Զիս պր. Մարշըլը փախցնողներուն ճամբուն վրայ դիր։ Ապա ձիուս հարուած մը տուր մտրակովդ և ան կը գտնէ զիրենք։ Ձիերը, գիտես որ, մինակ մնալ չեն սիրեր, Թոմփսըն։

—Նոյնպէս և ես, տէր իմ, թէև ձի մը չեմ,—ըսաւ Թոմփսըն, հանդարտօրէն Քինի անասունին սանձը բարձրացնելով։

—Ի՞նչ ըսել կուզես,—հարցուց Քին դաժանօրէն։

Թոմփսըն տեսաւ, որ ատրճանակին բունը հոյակապօրէն գրպանէն դուրս էր ցցուած, ու ձիերը ճամբու հանեց։

—Հետքերուն սկսած կէտը հասա՞նք,—հարցուց Քին ատեն մը վերջ։

—Այո՛,— պատասխանեց Թոմփսըն անտարբերօրէն։

—Ուրեմն ձեռք թօթուենք ու բաժնուինք։ Մնաս բարեաւ. շատ ազնիւ մէկը եղար ինծի հանդէպ, Թոմփսըն։ Եթէ բան մը պատահի, մի մոռնար փաստաբաններուն երթալ։

Թոմփսըն յամառօրէն Քինի ձին կառաջնորդէր։

—Վերադարձիր,—հրամայեց կոյր բանաստեղծը։

—Ներեցէք, տէր իմ,—ըսաւ Թոմփսըն, գլխարկին դպչե-

լով, իբրև լոկ ունակութեան արդիւնք.—Ներեցէք, տէր իմ։ Կրնաք արտաքսել զիս, երբ Անգլիա վերադառնանք, սակայն՝ անիծեալ ըլլամ, եթէ հոս մինակ թողում ձեզ։

Ու երկուքը միասին յառաջ անցան։

---

## IV

### «Աւելի հզօր սէր»

Կարա-Օղլու ոլորապտոյտ ճանապարհներով տարաւ Երասդոս այն այրը, որ երկար ատեն իր խմբին կայանն էր եղած։ Կեանքը՝ գրեթէ աւարտած ողբերգութիւն մը երեցաւ իրեն, որովհետև այդ առաւօտ իսկ իմացած էր Պոլսոյ «Պալատական կուսակցութեան» յղացած նոր դաւը, որ էր՝ Թիւրքերուն իբրև հայ ծպտուած Բանկ Օթօմանի գրաւումը, այսպիսով նոր առիթ մը ներկայացնելով իր դժբախտ հայրենակիցները կոտորելու։ Ան երբեք լրջօրէն հաւատացած չէր «Հայաստանը՝ Հայուն» կոչին. սակայն, հակառակ իր բոլոր ապիրատութեանց, կամ թէ՝ շնորհիւ ատոնց, Հայաստան բազմաթիւ պատեհութիւններ կուտար ատոնք ի գործ դնելու. ան կը սիրէր իր հայրենիքը։ Անգլիոյ թերացումը՝ ի նպաստ Հայաստանի միջամտելու՝ պաշարած էր զինքը զայրոյթով և սրտմտալից ատելութիւնով մը դէպի ամեն ինչ, որ անգլիական էր։ Եւ քանի որ չկար անգլիացի մը, որուն վրայ իր քինախնդրութիւնը թափէր, լաւագոյնն էր ձեռք ձգել ամերիկացի մը։ Կար այլ անհաճոյ պարագայ մը, որ ծանր մտածումի առիթ կուտար։ Եթէ չտիրանար Ֆէնէլայի աղամանդներուն, շատ քիչ յոյս կար վերջնականօրէն Ռուսաստան փախչելու։ Իր անակնկալօրէն ձեռք բերած մանրանկարը Ֆէնէլայի գաղտնիքը կը պարզէր. աղջիկը «խող միսիօնարը» կը սիրէր։ Կա՞ր արդեօք ատկէ աւելի անախորժ դրութիւն մը... Եթէ զոհէր Երասդոսը իր վրէժխնդիր մոլուցքին, յայնժամ աղամանդներուն տիրանալ անկարելի էր. եթէ վերադարձնէր Երասդոսը իր բարեկամներուն՝ աղամանդները յանձնուելու պայմանով, այն ատեն վրէժխնդրութեան առիթ չէր մնար։ Ըլլալով հայ մը, կուզէր որ այս երիտասարդին հետ ալ հաշիւը փակէր, քանի որ անգամ մը նենգած էր զինքը այնքան ճարտարօրէն։ Այժմ, միևնոյնը ըրած

էր ինք, ու այդ մտածումը հաճոյքի քմծիծաղ մը բերաւ դէմքին։

Ներկայի գործունէութեան անհրաժեշտութիւնը արթնցուց զինքը այլայլած խոհանքներէ և, ճաշակել տալու համար Երասդոսի գերութեան դառնութիւնը, թուքաւ երեսին։

—Երանի՜ թէ ձեռքերս ազատ ըլլային,—հեւաց Երասդոս։ —Միայն հինգ րոպէի համար։ Հինգ րոպէն իսկ շատ է, սրիկա՛յ։ Ատրճանակի մասին ալ հոգ չէի ըներ. բռունցքը բաւական էր։

—Սիրելի պարոնս,—ըսաւ հայը, իր թուխ կարմիր աչքերը գոհ ատելութիւնով մը փայլուն,—ցաւալի է թէ տակաւին զիս տխմարի մը տեղ կընդունիս, հակառակ վերջի դէպքին։ Կը վախնամ քեզ յուսախաբ ընել, ու զարթնումը շատ ալ հաճելի պիտի չերևնայ։

—Զարթնումներու վրայ չէի խօսիր, գթառատ ստահակ, եթէ քու տեղդ ըլլայի,—պատասխանեց Երասդոս։—Կրնաս քու քարայրի զարթնումդ յիշել։

—Օ՜, բնա՛ւ մի՛ վախնար, երիտասարդ բարեկամս։ Յիշողութիւնս լաւ է. երբէք չեմ մոռնար,—վրայ բերաւ հայը, իմաստալից շեշտով մը։—Ու մեծ ազնուութիւն մըն է քու կողմէդ՝ քարայրը վերյիշել ինձ. Քեզ նորութիւն մը ցուցնելու մըտածումը կառթէ ինձ։ Թերևս կրկին տեսնել ուզես։

—Գլուխդ թակարդի մէջ կը դնես, եթէ հոն երթաս։

Կարա-Օղլու անմիջապէս կասկածոտ դարձաւ։

—Փունդերը մինչև վաղը դուրս չեն ելներ, և կարծես անձրևելու ալ վախ կայ։ Կը փորձեմ,—ըսաւ յանկարծ։—Գիշերը կրկին քարայր կը վերադառնանք։ Ատի ինծի ժամանակ կուտայ որոշելու թէ՝ ծերուկին ադամանդներուն հետ փոխարինե՞մ թէ հոն ողջ խորովեմ քեզ։

—Զիս չես կրնայ ուտել,—ու Երասդոս իր ատրճանակը տենչաց։

Ի՞նչ էր այս բոլոր խօսակցութիւնը՝ միստիքական ադամանդներու մասին։ Ուրիշ մը լսած չէր Երասդոս անոնց մասին։

—Թերևս դու գիտես, թէ ծերուկը ո՛ւր պահեց անոնք,—շարունակեց Կարա-Օղլու։

Լոյս մը սփռուեցաւ Երասդոսի մտքին վրայ։ «Ծերուկը» Ֆէնէլայի հայրն էր, ու Կարա-Օղլու տեղեկութիւն ունէր անոր մօտ կարծուած ադամանդներու մասին։ Ֆէնէլա բնականաբար լուր չունէր այդ գոհարներուն վերաբերմամբ։ Ուրեմն ո՞ւր էին անոնք։

—Անոնց համա՞ր էր, որ միս Թրէսօքը սպաննեցիր,—անմեղօրէն հարցուց Երասդոս։

Կարա-Օղլու ետ ընկրկեցաւ։

Այդ պահուն իր խմբապետը վրայ հասաւ աճապարանօք։

—Մեզ կը հետևին,—գոչեց։—Լաւ չըլլա՞ր որ ատեն մը ցըրուինք ու այս խոզ միսիոնարին ալ դանակ մը խրենք։

Կարա-Օղլու արտորալից նայուածք մը ուղղեց իրեն։

—Զարմանալի չէ, որ Հայաստանը գերեալ է,—ըսաւ դառնօրէն,—երբ խումբ մը հայեր չեն կրնար երկու հոգիի դէմ կռուիլ։

—Պիտի սպասե՞նք ուրեմն անոնց,—հարցուց խմբապետը։

—Անշո՛ւշտ։—Կ-արաՕղլուի արտայայտութիւնը կատարեալ այլայլումի փոխուեցաւ։—Կոյր անգլիացին և իր ծառան է։ Ճանապարհնին կորսնցուցած ըլլալու են։

Երասդոս սարսափով դժգունեցաւ։ Ֆէնէլա խենթեցած էր, կամ թէ Թոմփսըն կաշառուա՞ծ էր Քինը առիծին որջը առաջնորդելու։

Երկուքը դանդաղօրէն յառաջ կուգային, կոյր բանաստեղծը անհոգաբար սիգարէթ մը ծխելով։ Թոմփսընի ձեռքն ատրճանակ մը կար, որով զգուշացուց հայը տեղը մնալ։

—Չեմ կրակեր՝ եթէ քու տեղդ ըլլամ,—ըսաւ հեգնաբար։

—Տէրս մեր հոյակապ խոհարարին հետ խօսիլ կուզէ։

—Մէկը տեսնելու, շատ առիթ չես ունենար, եթէ փոքր ինչ աւելի քաղաքավար չվարուիս,—պատասխանեց Կարա-Օղլու։

—Այդ քու աչքերդ դուրս կը հանենք և տիրոջդ պէս քեզ ալ կոյր կը շինենք։ Թող զինքը։ Իրեն հետ առանձին տեսակցութիւն մը կուզեմ։ Նախ այդ ատրճանակդ յանձնէ։

—Տո՛ւր իրենց, Թոմփսըն,—զուարթօրէն յարեց Քին։—Ապա թէ ոչ՝ գանկդ կը ջախջախեն։

Թոմփսըն ակամայօրէն յանձնեց։

—Կապելու հարկ չկայ... դեռ ևս,—ըսաւ Կարա-Օղլու։—Հեռացի՛ր, շո՛ւն։ Այս պարոնին խօսիլ կուզեմ։

Քինի կողմը գնաց, բռնեց անոր ձիու սանձէն և մէկ կողմ տարաւ։

—Զի՞ս տեսնել կուզէիք,—հարցուց, իր լաւագոյն անգլիական եղանակով։—Համալսարանական մը, այնպէս չէ՞։

—Այո՛. St. John's.

—Ա՜հ, ես ալ Magdalen էի։ Շատ ընտիր տեղ է Մագդալէն, սակայն շատ սուղի կը նստի մարդու։ Մագդալէն մեծ ծառայութիւններ մատոյց ինծի։

—Յուսամ փոխարինեցիք այդ ծառայութիւնը. թէև չեմ նշմարեր։ Սիգարէ՞թ մը։

—Շնորհակալութիւն,—մռլտաց միւսը,— բայց—յիշեցէք, որ հոս Հայաստանն ենք։

—Մոռնալիք չունիմ։ Հրաշալի՜ վայր մը, մեր վերջին արկածներէն դատելով։

—Դեռ ես զերծ չէք առոնցմէ։ Ի՞նչ բանի կը պարտիմ այս այցելութեան պատիւը։

—Լա՛ւ,—ըսաւ Քին հանդարտօրէն։—Այդ երիտասարդը թակարդելու հնարագիտութիւնդ հիացում պատճառեց ինծ ու եկայ ինչպէս ըրելդ իմանալու։ Կին կա՞ր գործին մէջ։

Հայը խնդաց։

—Օ՛, այո՛, կնոջ մը միջոցով։ Գիտէք թէ «գեղեցկութիւնը մէկ հատիկ մազով մը կը քաշէ մեզ»։

—Այդ՝ մազէն կախուած ունիս։—Քին սիգարէթին ծայրը նետեց։—Հո՛ս նայէ, Մագդալէնի Բլէք, ի՞նչ մտադիր ես ընել երիտասարդին, հիմա որ ձեռքդ է։

—Խորովել զայն։

Ու Մագդալէնի Բլէքը փոխուեցաւ կրկին հայաստանցի Կարա-Օղլուին։

—Իր ուղեղը քուկինէդ աւելի ճկուն չէ՞։

—Ա՛հ, զինքը ծաղրել չեմ ուզեր, այլ ցիցի մը կապել,—քեքեց Կարա-Օղլու։--Շատ ծաղրելի չի դառնար, երբ խորովիլ սկսի։

—Ես չեմ ըներ՝ եթէ քու տեղդ ըլլամ։ Օքսֆորդի շրջանաւարտներն այդպիսի բաներ չեն գործեր։

—Հայը մի՛շտ հայ է։

—Անշո՛ւշտ՝ մինչև որ լաւագոյնը սորվի՝ Օքսֆորդի մէջ։ Ներեցէք այսպիսի չնչին կէտ մը յիշելուս, սակայն դրամի նուազութիւն ունի՞ք այս պահուս։

—Ո՛չ,—պատասխանեց միւսը խոժոռաբար։—Ես դրամ ունիմ Անգլիա, բայց չեմ կրնար գանձել։ Պարագաները չեն թոյլատրեր։

—Այո՛, գիտեմ։ Ի հարկէ, մտադիր չէիք դուք միս Թրէսօքն սպաննելու։

—Ո՛չ։ Անակնկալ կերպով եկաւ վրաս, ու ես... ես ալ մոռցայ, որ օքսֆորդեան մըն էի։

—Այո՛. Օքսֆորդի աշակերտներն առհասարակ ծեր կանայք չեն սպաններ։ Խորհեցայ թէ արկած մըն էր այդ։

—Շատ անախորժ արկած մը։ Եթէ չպատահէր այդ, հիմա այս անիծեալ Հայաստանը չէի գտնուիր։

—Քու ճաշակիդ և ունակութիւններուդ տէր մէկու մը հա-

մար շատ անպատշաճ տեղ մը լինելու է սա։ Ի՞նչպէս պիտի պրծնիս այստեղէն։ Ներկայէն բաղդատելով՝ կարծես հայ չը պիտի մնայ շուտով։

—Ամէնմէկդական, դառնալով, գուցէ,—պատասխանեց խառ֊վալից։

—Ձեմ դառնար, եթէ քու տեղդ ըլլամ։ Յիշէ Մագդալէնը։

—Ինծի նայէ. եթէ իմ անցեալ կեանքիս վրայ խօսիս,—ըսաւ Կարա Օղլու յանկարծական բորբոքումով,—դանակ մը կը խրեմ սիրտդ, թէև կոյր մըն ես, Ս. Ջօնի Քին։

—Ա՜հ, կը տեսնեմ թէ չես ուզեր յիշել այն օրերը, որ դադրած էիր հայ մը ըլլալէ։ Թերևս լաւ է։ Այժմ գործի դառ֊նանք։ Կը կարծե՞ս թէ հաճոյքի համար հետևեցայ քեզ։

—Չ՛ագիւ թէ։

—Այդ երիտասարդին համար գործով մը ունիմ։

Ու ձեռքը Երասդոսի ձայնը եկած կողմը երկարեց։

—Ու ես կատեմ զինքը, որ կենթադրեմ թէ գտնալու ես։

—Օ՜, այդ նկատողութեան չառնուիր։ Գործի մէջ մարդ սիրելու կամ չսիրելու ընտրութիւն չունի։ Որչա՞փ։

—Ի՞նչ ըսել կուզես։

—Ի՛նչ որ կըսեմ։

—Որչափ՝ ի՞նչ բանի համար։

—Որչա՞փ՝ պատանին ազատ արձակելու։

Կարա-Օղլու վարանեցաւ։

—Ծորովել կուզեմ զինքը,—ըսաւ մտածկոտ։

—Լաւ է չընել. շուտով կանցնի։ Նախ որ՝ երկրէն փախ֊չելու դրամ չես գտներ. երկրորդ որ՝ բարեկամները այդ միտ֊քը ի գործ դնելու առիթ չեն տար։

Կարա-Օղլու խորհեցաւ։

—Այո, ճիշտ է, անշուշտ. բայց վրէժը դրամէն աւելի կարժէ։

—Պարապ խօսք։ Ծիստ կարճատև կըլլայ։ Դրամով աւե֊լին կըլլուի, մանաւանդ Պարիզ կամ Պետերբուրգ։

—Ա՜հ...—հայուն բերանը ջրոտիլ սկսաւ։—Որչա՞փ, ուրեմն։

—Հազար ըսե՞նք։

—Հազարը շատ երկար չի տևեր։

—Ոչինչէն շատ աւելի կը տևէ։

—Ճիշտ է,—ըսաւ միւսը, անորոշ կերպով։ Հայեացքը Ե֊րասդոսի կողմը ուղղեց։—Ո՛չ. պիտի սպաննեմ զինքը։ Կուզեմ իր ճիչը լսել՝ երբ բոցերը կայրեն զինքը։

—Շատ լա՛ւ, ուրեմն։ Թողունք խնդիրը։

—Սակայն քեզ ի՞նչ ընեմ։

—Օ՜, ես նշանակութիւն չունիմ։ Ինձ համար մի նեղուիր։

—Ո՛չ,—ըսաւ հայը, տեսակ մը մարդասէր զգացումով Քինի նկատմամբ։—Երկուքս ալ միևնոյն նաւուն մէջն էինք, հէ՞։ Ոչ մէկերնուս ալ կը ցանկայ օրիորդը։

—Կարա-Օղլու, Մագդալէնի շրջանաւարտ, սեփական խընդիրներ կը քրքրես։ Վարքդ ետիդ Օքսֆորդ ձգելու հարկ չը կար։ Դժբախտաբար, կոյր մը ըլլալով, չեմ կրնար քեզի դաս մը տալ։

—Օ՜, դաս առնել չեմ ուզեր,—մռլտաց Կարա-Օղլու։—Անշուշտ, եթէ վերադառնայ իրեն, աղջիկը կամուսնանայ հետը։ Կարծեմ թէ լաւագոյն կընէիր ինծի հազար ոսկի վճարել՝ երիտասարդը ճամբէն մաքրելու համար։ Ինծի նայէ․ եթէ համաձայնիս ատոր, ութ հարիւր ոսկիով բարեկամներուդ կը վերադարձնեմ քեզ։

—Բաւական երկար ատենէ ի վեր թողած լինելու ես Մագդալէնը*),—պատասխանեց միւսը չոր շեշտով մը։—Վերջին անգամն ըլլալով․ ազատ պիտի արձակեմ երիտասարդը անմիջաս՝ եթէ դրամը երաշխաւորեմ քեզ։ Ես հոս եկած չեմ իմ մասիս խօսելու։

Կարա-Օղլուի դէմքը անհաճոյ երևոյթ մը առաւ։

—Թողո՞ւլ զինքը... Պարի՞զ... Ա՜հ, Պարիզ կը վաստակի՞... Այո՛, եթէ իր տեղը գրաւես։

—Օ՜, անշուշտ։ Ժամանակէ մը ի վեր ես քեզ կը խորովէի․ հիմա կարգը քուկդ է։ Միայն, երիտասարդը թող չհասկնայ։ Չեմ ուզեր իրարանցում հանել։ Եթէ գիտնայ՝ չերթար։ Կը սիրեմ պատանին, իսկ միւս կողմանէ գրեթէ ձանձրացած եմ ինքզինքէս։ Մեկնած ատենս խորհեցայ, որ եթէ հոս գամ, կրնամ կերպով մը օգտակար հանդիսանալ։

Կարա-Օղլու, անընդունակ այսպիսի վեհանձնութեան մը հաւատալու, դաւաճանութիւն մը կասկածեցաւ։ Այսուհանդերձ, երկուքն ալ իր տրամադրութեան ներքև էին։

—Կուզեմ երկուքդ ալ միասին խորովել,—ըսաւ հանդարտօրէն։—Քե՛զ, որովհետև յիշել տուիր ինձ այնպիսի բաներ՝ զորս մոռնալ կուզէի․ միսիոնար խոզը՝ որովհետև միշտ ատած եմ

*) Մագդալէն և Ս. Ջօն անունները յաճախ կրկնուելով վէպի ընթացքին, պէտք է գիտնալ թէ ատոնք երկու գլխաւոր անգլիական համալսարանական քաղաքներու—Օքսֆորդի և Քէմբրիճի—առանձին համալսարաններու անուններն են, որոնցմէ առաջնոյն մէջ ուսած կը թուի հայ հերոսը։

Ծ. Թ.

գինքը։ Բայց, քանի որ չեմ կրնար երկուքդ ալ խորովել և դըրամները ստանալ, հետևաբար կը թողում զայն։

—Մագդալէնի մը աշակերտին պատուո՞յն վրայ։

—Մագդալէնի մը աշակերտին պատուոյն վրայ։

—Ուրեմն,—ըսաւ Քին.—սկսինք։ Իմ ծառաս դրամը կը բերէ։

—Բայց ի՞նչ ապացոյց ունիմ...

—Ես ո՛չ կը ստեմ և ո՛չ ալ ծեր կանայք կը սպաննեմ։ Պէտք է վստահիս ինծի, ապա թէ ոչ՝ Պարիզ չկայ։ Թոմփսըն, հոս եկո՛ւր։—Գրպանէն բանալի մը հանեց։—Ասիկա ճանապարհորդական պայուսակիս բանալին է։ Հազար ոսկիի անգլիական թղթադրամ կը գտնես այնտեղ։ Առ անոնք և այս գիշեր ժամը հինգին այս պարոնին բեր։ Դիւրաւ կը հասնիս զապթիէներուն՝ եթէ արագ երթաս։ Կը հասկնա՞ս։

Թոմփսըն վարանեցաւ։

—Եւ դուք ի՞նչ պիտի ընէք, տէր իմ.

—Ես հոս իբրև հիւր պիտի մնամ։ Մինչև երեկոյ կը սպասես ինծի, և միւս առաւօտ միասին կը վերադառնանք։

—Եւ պր. Մարշը՞լ։

—Ան ևս կը մնայ։

Թոմփսըն մասամբ ապահովուեցաւ։

—Ձեզ թողուլ չեմ ուզեր, տէր իմ։

—Օ՜, պարապ բաներ մի խօսիր, Թոմփսըն։ Եթէ չերթաս, պր. Մարշըլի համար փրկանք տալու ուրիշ միջոց չկայ։

—Լա՛ւ, տէր իմ։ Եթէ կը հրամայէք...

—Անշուշտ կը հրամայեմ։ Կրնաս իմ մեծ վերարկուս ալ հետդ բերել։ Կարծես շատ ցուրտ պիտի ընէ.

Թոմփսըն ձեռքը գլխարկին տարաւ ու մեկնեցաւ։ Միայն զապթիէներուն մօտենալու պահուն էր որ տարակուսանքներ արթննալ սկսան մէջը՝ թէ արդեօք պատշաճ էր իր տէրը հոն թողուլ։

—Ա՛րդ,—ըսաւ Քին, ու անտես դէմքը հոյակապ լոյսով մը փայլեցաւ,—կը յուսամ մեկնողին ժամ մը միջոց տալով, իմ երիտասարդ բարեկամիս, «խող միսիոնարին» կապանքները կը քակես։ Նա ևս ուրիշ ճանապարհով մը ղրկէ, որպէս զի Թոմփսընին չհանդիպի։

—Անշուշտ։ Աստիճանաբար կը շարժինք. ու այս իրիկուն քու մարդուդ կը սպասեմ։ Մինչև անհաճոյ դառնալ սկսինք, ուզածնիդ կրնաք ընել։

—Օ՜, ես փախչելու պէտք չունիմ։ Պատանին ինծի ղրկէ շուտով։

Ըստ Քինի բաղձանքին, Երասդոս ժամ մը վերջ արձակուեցաւ։ Իր առաջին գործը եղաւ Կարա-Օղլուի վրայ յարձակիլ։ Հայը, ուժեղ ու արագաշարժ՝ ինչպէս յովազ մը, յոգնած պատանին դիւրաւ մէկ կողմ նետեց ու հեգնականօրէն յայտնեց, որ թեւերը շփէ, մինչև որ արեան շրջաբերութիւնը վերադառնայ։

—Հոս եկ, Մարշըլ,—գոչեց Քին,—և յիմարութիւններ մի՛ ըներ։

Երասդոս խոժոռաբար եկաւ։

—Կուզէի այդ մարդուն հետ վերջացնել, սակայն ոյժս մնացած չէ։

—Օղիի շիշ մը ունիմ գրպանս։ Ա՛յդ է։ Լաւ մը կոնծէ և ապա ինծի մտիկ ըրէ։

Երասդոս խմեց և աւելի լաւ զգաց։

—Դեռ ես շնորհակալութիւն չյայտնեցի քեզ՝ իմ ետեւէս գալուդ համար,—ըսաւ սրտոտ։—Այդ ստահակը միս Ուիլսընը լաւ գործածեց։ Ես գիտնալու էի, որ իր շատաբանութիւնը կրնար վտանգ մը յառաջացնել։ Ինչ որ է. վերջացած է հիմա։ Կարա-Օղլու ի՞նչ մտադիր է ընել մեզ հետ։ Իմ խեղճ ծերունի հայրս կարող չէ փրկանք տալ ինձ համար։ Բացի այդ, այս մարդիկը յուսահատած են. իրենց կեանքն ու մերը ձեռքերնուն մէջ է։

—Այժմ գլխաւոր կէտն այն է, որ միս Ֆրոմ ազատ է Կարա-Օղլուի ճանկերէն։ Գիտե՞ս թէ ինչու համար պէտք է իրեն վերադառնաս։

Երասդոս ցնցուեցաւ։

—Վերադառնամ... Ի՞նչպէս։

—Օ՜, ես քու փրկանքդ կարգադրած եմ։

—Բայց ինչո՞ւ իմս։ Ինչո՞ւ ոչ քուկդ։ Ես քեզ հոս մինակ չեմ թողուր։ Այսպիսի պարապ բաներ մի խօսիր։

—Ինձ մտիկ ըրէ։—Քին ձեռքը միւսին թեւին վրայ դրաւ։—Ես քենէ տարիքոտ եմ, սիրելիս, և խօսածս գիտեմ։ Մէկ գերագոյն րոպէ մը կուգայ մարդու կեանքի ընթացքին, երբ ան պէտք է ընտրէ երկու պարտականութեանց միջև։ Եթէ ճիշտ ընտրութիւնն ընէ, մարդ է ան, և աւելիին հարկ չկայ։ Եթէ չընէ, մեռեալ մէկն է, աննշան կեղև մը, ստուեր մը։

—Բայց չեմ հաս...

—Շուտով կը հասկնաս։ Փոխանակ քեզ Անգլիա կանչելու, բաւականաչափ տխմար գտնուեցայ թոյլ տալ միս Ֆրոմի Հա-

յաստան գալ, երբ սա Բինգըլտըն մնալու էր խաղաղօրէն։ Իր մեկնումը քու յանցանքդ չէր. սակայն ես աւելի գիտնալու էի։ Այսուհանդերձ, դա հին պատմութիւն է հիմա։ Ինք հոս է. և այդ իրականութեան հետ պէտք է շարժիլ։ Փրկանք վճարեցի քեզ համար, որովհետև եթէ չվճարէի, Կարա-Օղլու քեզ կը յօշոտէր կամ կը չարչրկէր։

—Բայց...

—Սիրելի որդեակ, աճապարանքի մէջ ես միշտ։ Րոպէ մը մի ընդմիջեր զիս։ Բացի այդ, մարդը անհամբեր կը դառնայ։ Ֆէնէլա քեզի կը կարօտի։ Կոյր մը լոկ խոչընդոտ կրնայ ըլլալ իրեն։ Պէտք է իրեն վերադառնաս և մօտը մնաս։ Այս աշխարհի մէջ միակ ընելիքդ է այդ, և պէ՛տք է ընես։

—Անիծեալ ըլլամ, եթէ քեզ այս շանը թողում միայնակ։ Այդ խմ...

—Պէտք է իրեն վերադառնաս և զինքը պաշտպանես մարդու մը պէս։

—Չեմ թողուր քեզ։

—Պէտք է թողուս՝ իր սիրոյն։

—Հո՛ս կը մնամ,—ըսաւ Երասդոս յամառաբար։—Այդ սրիկան կրնայ ուզածն ընել մեր երկուքին։ Դուն ինձ համար պէտք չէ որ զոհուիս։ Կրնայ քեզ պահել մեծ փրկանքի մը համար։

—Պէ՛տք է Սվազ վերադառնաս, որովհետև Ֆէնէլա կը սիրէ քեզ, և դու զինքը կը սիրես. պէտք է վերադառնաս Սվազ, որովհետև քեզ աւելի դժուար է երթալ, քան թէ հոս մնալ։ Ֆէնէլա վտանգներու մէջ է. քեզի կը կարօտի։ Եթէ չերթաս ու չհսկես զինքը, կրնայ այնպիսի դէպք մը պատահիլ իրեն, որ քեզ յիմարութեան կը մղէ։ Ա՛րդ, կը հասկնա՞ս ինծի։

Երասդոս կանգնած էր գլխիկոր, բարձրացող հեկեկանքը զսպել ջանալով, որ իր առնականութիւնը անպատուել կը սպառնար։

—Բայց... դո՛ւ... դու ինչո՞ւ կընես այս բոլորը։ Ո՞վ եմ ես, որ ինքզինքդ զոհես ինձ համար։

Մինչ ձիուն բաշը կը յղկէր դողդոջուն մատներով, Քին մէկ ձեռքը անոր ուսին վրայ դրաւ։

—Սիրելիս, դու ամերիկացի ջէնթըլմէն մըն ես։ Ես տակաւին ճանչցած չեմ ամերիկացի ջէնթըլմէն մը, որ իր սիրած կինը պահպանել մերժէ։ Ես անկարող եմ պաշտպանել զինքը։ Ես կոյր, անօգ, տարիքոտ մէկն եմ. ան զիս չի սիրեր. քեզ կը սիրէ. և... և մենէ մէկը հոս մնալու է իր սիրոյն։ Այդ լոկ փըր-

կանքի խնդիր է։ Եթէ խնդիրը ծայրակէտին հասնի, ես կրնամ ինքզինքս սպաննել։ Քովս ատրճանակ մը ունիմ։ Բայց իմ մասիս նեղուելու հարկ չկայ։ Եթէ կը սիրես զինքը—եթէ կը սիրես զիս... գնա։ Անկէ աւելի որոշ պարտականութիւն մը եղած չէր տակաւին աշխարհի վրայ։ Գնա...

—Բայց դո՛ւ... դո՛ւ։

Երիտասարդին հեկեկանքները խեղդեցին զինքը։

—Կոյրի մը կեանքը ի՞նչ կարժէ քուկինիդ և իրենին մօտ։ Քսան տարիներէ ի վեր լոյս տեսած չեմ երբէք։ Այժմ այդ լոյսին կերթամ։ Ճանապարհը երկար ատեն խաւար մնաց և ցանկութիւնս չիրագործուեցաւ։ Սիրելի՛ս, թող այդ անձը արտասուելդ չտեսնէ։ Հեռացիր անկէ։ Յիշէ, թէ աղջիկը գիտնալու չէ բնաւ։ Բաց ատի, Կարա-Օղլու քարայր կերթայ կոր։ Կրնաք դիւրաւ տեղը պաշարել և թերևս զիս ալ ապահով փրկել։

—Չեմ կրնար թողո՜ւլ քեզ .. Չեմ կրնար թողո՜ւլ քեզ։ Ճիգ մը ընենք։ Ես կրնամ ձիուդ քովէն վազել։

Քին գլուխը շարժեց։

—Խոստացած եմ։ Ս. Ջօնի Քինը խօսք տուաւ Մագդալէնի Կարա-Օղլուին։ Ուրիշ բան չկայ, սիրելի՛ս, բայց եթէ մարդու պէս տոկալ և հեռանալ։

—Եւ... և... մ՛ն,—երիտասարդը փսփսաց, բազուկները Քինի վզին շուրջը դնելով։

—Նա պէտք է խորհի, թէ դու բան մը չէիր գիտեր իմ հոս գալուս մասին և թէ փախար։ Ա՛րդ, հեռացիր, սիրելի՛ս։ Նայէ որ Թոմփսըն բերանը փակ պահէ։ Սիրոյ երջանիկ ուրախութիւնը ձեզ հետ ըլլայ։ Եւ հիմա՝ գնաս բարեա՛ւ...

Դողդոջուն քայլերով Երասդոս շարժեցաւ, վերադարձաւ, սկսաւ, վերադարձաւ կրկին, նորէն ճամբայ ելաւ՝ կուրօրէն յառաջ նետուելով, մինչ Քինի դէմքին վրայ մայրը մտնող արևուն պերճանքը կը շողա՛ր։ Երասդոս վերջապէս սկսաւ վազել։ «Աւելի հզօր սէր» հևաց։ «Աւելի հզօր սէր տածած չէ մարդ...»։ Ու երեսին վրայ ինկաւ։ Նորէն ոտքի ելաւ ու վազեց...

Այդ գիշեր, երբ Կարա-Օղլուի սիրտը լեցուած էր գինիով և արիւնի մոլուցքով, եկաւ Քինի, որ իր անլոյս աչքերուն առջևէն անցնող շատ մը բաներու վրայ կերազէր։

—Է՛յ, Ս. Սօճի Ջօնի,—ըսաւ, գինով շարժումներով և ձայնով մը։—Դրամը շիտակ առի։ Ինծի նայէ. դրամը շիտակ առի։ Կրակը պատրաստ է։ Ժամանակդ հասած է։

—Մագդալէնի Կարա-Օղլու, հինգ բոպէ ևս տուր Աստուծոյս հետ խաղաղութիւնս կնքելու։

Մինչ Կարա-Օղլու, յապաղման վրայ բրթմնջելով, կրակին մէջ կը գլորէր, Քին ատրճանակին բերանը զետեղելով օդին, կրակեց...

Գինով խելագարութեան մէջ, Կարա-Օղլու ջանաց մեռեալ մարմինը կրակին վրայ քաշել, սակայն խարխափեցաւ, գոհին քով ինկաւ, ու քնացաւ...

Ջ. Բ. ԲԸՐՋԻՆ

Թարգմ. անգլ. Մինաս Ցոլակ

(Վերջը միւս անգամ)

---

## ԱՊՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ...

---

Ապրելու համար պէտք է մի աղօտ
Գէթ յոյս ունենալ,
Մի լոյս ունենալ
Հեռանկարում՝ քաղցր ու կարօտ։

Երազներ պէտք են ապրելու համար,
Անուրջներ անուշ,
Կամ մի սէր քնքոյշ
Եւ կամ յուշերի մի նսեմ կամար։

Բայց եթէ չունես ոչինչ աշխարհում,
Երազներ, յոյսեր.
Կամ մի չքնաղ սէր՝
Մտածի՛ր, թշուառ, ինչո՞ւ ես ապրում։

ԷՄ-ՕՍ

---

# ՕՍՄԱՆԵԱՆ ՀԱՅԵՐ *)

# ԱԶԳԱՅԻՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ

## (1860—1910)

---

### ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

*Իգնատիեվի յարաբերութիւնները Գէորգ Դ. կաթողիկոսի հետ.—Ռուսական հիւպատոսարաններ Հայաստանում.—Իշխ. Գորչակով.—Պոլոժէնիէի առթիւ թղթակցութիւններ.—Գէորգի երկիւղը Սիսի աթոռից.—Գէորգ Դ. և Խրիմեան պատրիարք.—Իգնատիեվի միջամտութիւնն և թղթակցութիւնը Գէորգի հետ.—Իգնատիեվի ծրագիրները Կ. Պոլսում.—Խորէն Նար-Բէյ.—Պէրայի գերեզմանատան հարցն և Իգնատիեվի միջամտութիւնը.—Քաղաքականութեան փոփոխումը։*

*Մենք տեսանք, թէ ինչպէս կոմս Իգնատիեվ Ադրիանուպօլսում Ռուսճուգլեան վարդապետին գանգատվում էր, թէ ինք «հայոց դատին պաշտպան և փաստաբան եղած է, բայց հայերը նրա նպատակներին արգելք են եղած»։ Ռուսական դեսպանի այս խօսքերը կարօտ են բացատրութեան, և մենք աւելորդ չենք համարում պատմել այստեղ, միջանկեալ կերպով, այն դերն, որ կատարել է այս ճարտար զինուորական-դիւանագէտը**) թէ էջ-*

---

**) «Արօր» 1910 թ. № № 1, 2, 3, 4, 5, 6—7, 8—9—10, 12 և 1911 թ. № № 1, 2—3, 4 և 5—6.*

***) Կոմս Նիկոլայ Պաւլովիչ Իգնատիեվ, զօրապետ, զինուորական ակադեմիայի ուսումնաւարտ, ծնուած է 1832-ին. 1855-ին զինուորական գործակալ է նշանակուած Լօնդօնում և մասնակցած է Պարիզի դաշնագրի (1856) կռելուն։ Կ. Պօլսի դեսպան նշանակուեց 1864-ին և շատ շուտով գրաւեց սուլթան Աբդիւլ-Ազիզի վստահութիւնը։ Իգնատիեվն էր, որ յաջողեցրեց բուլգարական եկեղեցու անջատումը յունականից։ Նա հզօր պաշտպան էր Թրքահպատակ քրիստոնեաներին, առանձնապէս սլավական ցեղին և մեծապէս գործակցած է 1877-ի պատերազմի ժամանակ։ Բայց երբ գլխա-*

միածնի կաթողիկոսութեան և թէ Կ. Պոլսի հայութեան վերաբերեալ եկեղեցական-հասարակական խնդիրներում։ Առանձնապէս հետաքրքրական է այն յարաբերութիւնն, որ գոյութիւն է ունեցել 1870—1876-ի շրջանում Գէորգ Դ. կաթողիկոսի և Իգնատիեվի միջև։

Գէորգ կաթողիկոս հայրապետական աթոռը բազմելու առաջին տարուց սկսած՝ Թիւրքիայի գաւառներից գանգատներ էր ստանում, թէ այնտեղ իր հօտը մահմեդականների հարստահարութիւններին էր ենթարկուած և ոչ մի պաշտպան չունէր, երբ հայ ազգի միւս փոքրագոյն հատուածները, կաթոլիկներն և բողոքականները, վայելում էին օտար պետութիւնների հովանաւորութիւնն, առաջինները Ֆրանսիայի, երկրորդներն Անգլիայի։ Այս պատճառով Գէորգ Դ. 1867-ին դիմեց ռուսական կառավարութեան և՝ նկարագրելով վերոյիշեալ հանգամանքը՝ խնդրեց, որ հայ-լուսաւորչականների պաշտպանութիւնն էլ Ռուսաստանն ստանձնէ*)։ Նա միևնոյն ժամանակ խնդրում էր, որ այս պաշտպանութիւնն անմիջապէս ի գործ դնելու համար՝ Ռուսաստանն ես հիւպատոսներ նշանակէ այն բոլոր տեղերում, ուր որ ֆրանս. և անգլ. հիւպատոսներ կային։ Կաթողիկոսը նոյն իսկ որոշում է այն տեղերն, ուր ինքը բաղձալի է համարում, որ ռուս. հիւպատոսներ գտնուեն, այն է՝ Մարաշ, Գաղատիա, Խարփութ, Դիարբէքիր, Սեբաստիա և Թէքիրդաղ։ Բացի դրանից՝ նա առաջարկում է հիւպատոսական գործակալներ դնել Ադանա, Մուշ և Մալաթիա քաղաքներում։ Ինչպէս որ իբրև հիմն այս միջնորդութեան՝ ծառայեցնում էր այլադաւան հայերի եւրոպական հիւպատոսներից գտած պաշտպանութիւնը, նա նոյն ուղղութեամբ շարունակելով փաստաբանում էր նաև, թէ «նշանակումն

---

ւորաբար նրա մասնակցութեամբ կնքուած Սան-Ստէֆանոյի դաշնագիրը Բեռլինում վերաքննութեան ենթարկուեց, այս հանգամանքը մի տեսակ անյաջողութիւն նկատուեց նրա համար և դրանով վերջացաւ նրա դիւանագիտական գործունէութիւնը։

*) «Բուն հայք, որք բնակին ի սահմանս Թուրքիոյ, զուրկ զրկեալ յանուղղակի հովանաւորութենէ անգամ քրիստոնեայ տէրութեանց, անկանին յաճախ ընդ նեղութեամբն և ընդ վշտակրութեամբ, այլ ինչ հեստեալքն ի հայոց Հայաստանեաց եկեղեցւոյ, հայ-կաթոլիկք և բողոքականք, ունելով պաշտպանս ինքեանց զգործակատարս Գաղղիոյ և Բրիտանիոյ, գտանին ի բարւոք վիճակի, և Պրօպագանդայն կաթոլիքական՝ վայելելով զհզօր պաշտպանութիւն նոցին յոր աւուր զօրանայ ի վնաս եկեղեցւոյ բուն Հայոցըս»։

Գէորգ կաթողիկոսի նամակը Կովկասի Գլխ. Կառավարութեան պետ բարօն Նիկօլային, № 13, 23 ապրիլ 1867. (Կաթող. Դիւան Էջմ.)։

*հիւպատոսաց կարէ առնել բարւոք ներգործութիւն վասն լրութեան եկեղեցւոյ հայոց և առաւել ևս քաղաքական տեսութեան Ռուսական Կառավարութեան յԱրևելս»*)։*

*Ռուսական կառավարութիւնն այն ժամանակ ուշադրութեան առաւ այս խնդիրն և գտաւ, թէ ռուսական շահերի տեսակէտից օգտակար կը լինէր հիւպատոսներ կարգել Կովկասի սահմանակից Թրքական 6 վիլայէթներում, սակայն այս բանն այնքան էլ հեշտ իրագործելի չէր, որով հարցն երկար ժամանակ բաց էր մնացել, երբ 1872-ին, Գէորգ՝ առիթ բռնելով առանձնապէս Վանից իրան եղած դիմումները քրդերի բռնութիւնների դէմ՝ այս անգամ ուղղակի Գօրչակօվին**), Պետերբուրգ, կրկնեց իր նախորդ խնդիրքը, բացատրելով դարձեալ թէ ռուսական հիւպատոսները Հայաստանում՝ ռուսական տէրութեան համար այն առաւելութիւնն ունէին, որ նրանք «պաշտպանելով զշահս քրիստոնէից արևելեան եկեղեցւոյ ի դրունս դատաւորաց և նահանգապետաց, կարեն միշտ յիշեցուցանել նաև զզօրութենէ և նշանակութենէ հզօր Պետութեան Ռուսաց, որ իւրով ազդեցութեամբ ոչ պակաս քան զԱրևմտեանսն է», և ապա միջնորդում է, որ առայժմ գոնէ Վանի մէջ հաստատուի ռուսական հիւպատոսութիւն, ինչպէս որ խնդրում էին վանեցիք և ինչպէս միջնորդում էին այս առթիւ նաև «դասք բարձրաստիճան եկեղեցականաց և քահանայից Կ. Պօլսոյ»***)։*

*Անկասկած՝ կաթողիկոսի այս միջնորդութեան ծանօթ էր Իգնատիեվ, քանի որ նրա միջոցով միայն պիտի կատարուէր պաշտօնական բանակցութիւնը Բ. Դրան հետ, հիւպատոսներ դնելու մասին։*

*Բայց Գէորգ ուղղակի թղթակցում էր նաև Իգնատիեվի*

---

*) *Անդ։*

**) *Այս նշանաւոր պետական անձը շատ կարևոր դեր է խաղացած Արևելեան Խնդրում։ Իշխան Ալէքսանդր Միխայլովիչ ծնուած է 1798-ին և վախճ. 1883-ին։ Շնորհիւ իր իշխանական ծագման և դիւանագիտական ընդունակութիւնների՝ շատ շուտ յառաջացում է ունեցած դիպլօմատական ասպարէզում, ուր մտած է 23 տարեկան հասակում։ 1856-ին նշանակուած է արտաքին գործերի մինիստր և պետական կանցլեր։ Այս պաշտօնի մէջ մնացած է մինչև 1882։ Իր ժամանակի եւրոպական բոլոր նշանաւոր քաղաքագէտներն իր անձնական բարեկամներն են եղած, ինչպէս Թիէր, Բիսմարկ և Գլադստոն։ Իշխ. Գօրչակօվ ԺԹ. դարի ռուսական ամենամեծ քաղաքագէտն է համարվում։ Գօրչակօվն էր, որ պահանջում էր Թիւրքիայի վարչական բարենորոգումը գաւառական ապակենտրոնացման և տեղական ինքնավարութիւնների հիման վրայ, ինչպէս այդ բացատրել ենք մեր այս աշխատութեան Ա. Մասում (Գլ. ԺԱ.)։*

***) *Կաթող. գրութիւնը №280, 30 մայիսի 1872. (Կաթող. Դիւան Էջմ.)*

հետ, հայ եկեղեցական և հասարակական խնդիրների մասին։ Նրանց ծանօթութիւնը սկսում էր Բրուսայից 1866-ին, երբ դեռ Գէորգ՝ կաթողիկոս չէր ընտրուած և Իգնատիեվ այցելել էր Նրան այնտեղ։ Նրանց միջև մտերմութիւնն այն աստիճանի էր հասնում, որ կաթողիկոսը մտերմաբար խորհրդակցում էր Նրա հետ, իր նամակներով, այնպիսի նշանաւոր հայ եկեղեցականների մասին, ինչպէս էին Ներսէս Վարժապետեան և Խորէն Նար-Բէյ[1])։

Առաջինի մասին գրում է. «Այժմեայ հանգամանքներին նայելով, ես կը կարծեմ, որ Ներսէս եպիսկոպոսի (նման) հաճարեղ թշնամի[2]) Տաճկաստանի մէջ մնալը մեզ վնասակար է։ Կ. Պոլիս եղած ատենս շատերը կը խնդրէին, որ ես էջմիածնական եպիսկոպոս ճանաչեմ զնա, բայց ես մերժեցի իսպառ այդ խնդիրքն, իսկ այժմ ըստ վերոյիշեալ հանգամանաց կը կարծեմ, որ թէ նա խոնարհեալ գլխով ու զղջացեալ անձամբ գալու լինէր յէջմիածին, կարելի էր ընդունիլ զնա իբրև էջմիածնական եպիսկոպոս»[3]) և հարցնում է Նրա խորհուրդը։

Իսկ Նար-Բէյի մասին գրում է, թէ նա խաբել է Նրան և հակառակ իր խոստման չէ մնացել Էջմիածնում. ապա շարունակում է. «Կարի անբարեմիտ մարդ երևցաւ, որ ամենայն հնար սուրբ կը համարէ իր անձնական օգտին հասնելու համար։ Նա հոս փորձ կը փորձէր ինքզինքը պատգամաւոր ցուցնելու ի դիմաց Թիւրքիաբնակ Հայոց. կարծեմ որ պէտք է աչքի տակ ունենալ զնա, որ այնտեղ ևս մէկ պաշտօնական կոչումն չսեպհականէ իրեն»[4])։

Թէ այն տարիներում որքան մօտ էր Գէորգ Դ.-ի յարաբերութիւնը ռուսական դեսպանի հետ, երևում է Նաև հետևեալ թղթակցութիւնից, որի մէջ Նա՝ յանուն ռուսական կառավարութեան շահերի՝ խնդրում է միջամտել զուտ հայկական Ներքին գործերում։

Կ. Պոլսի հայ լրագիրների մասին Նա գրում է Իգնատիևին (1868 փետր. 14, № 14). «Յառաջ քան զելանելն իմ ի Կ. Պօլսոյ, խմբագրիչք ոմանք ի հայերէն լրագրաց, որ անդ, խընդ-

---

[1]) Գէորգ Դ. 1867-ին Պետերբուրգում եղած միջոցին վայելել է Իգնատիևի հօր հիւրասիրութիւնն ևս, Նրա յանձնարարութեամբ, և այնտեղից է սկսել իր մտերմական թղթակցութիւնը Նրա հետ։

[2]) Ստորագծումները մերն են։

[3]) Գէորգ կաթող. Նամակը Պետերբուրգից, 10 հոկտ. 1867, № 279. Կաթող. Դիւան Էջմիած.։

[4]) Անդ։

բեցին յինէն ստանձնել զմիջնորդութիւն առ ի մուծանել ըզլրագիրս, զորս նոքա հրատարակեն, ի ցուցակ անդրսահման ժամանակաւոր տպագրութեանց, զորս տայ բերել փոշտային կառավարութիւն մեր, առեալ ընդ նմին ի վերայ ինքեանց ըզպարտաւորութիւն չգրել ինչ ընդդէմ Ռուսաստանի»։ Եւ միջնորդում է, որ գոնէ «Մասիս» լրագիրն ազատ մուտք ունենայ Ռուսաստան, իբրև «պաշտօնական բերան Կ. Պոլսոյ Հայոց պատրիարքութեան»։

Սիսի եւ Աղթամարի կաթողիկոսութիւնների մասին նոյն տարին գրում է Նրան (ապրիլի 30, № 155).

«Մասնաւոր եղանակաւ ընկալայ ի Պոլսոյ զտեղեկագիր Յանձնաժողովոյն, որ մատուցեալն էր ի Նկատողութիւն Կենտրոնական Վարչութեան Հայոց, յաղագս հաստատութեան՝ ի վնաս պատրիարքական Աթոռոյս Էջմիածնի զկաթողիկոսութիւնս Սսոյ և Աղթամարայ։ Թէպէտ չյուսամք զի առաջարկութիւն այս կարիցէ անել զարձագանգ ի սիրտս ողջական մասին հայազնէից, սակայն ի վերայ այնր ամենայնի լրութիւն եկեղեցւոյս Հայոց և քաղաքական նպատակք կառավարութեան մերոյ յԱրեւելս յորդոր եղեն ինձ կանխել գրել ըստ այսմ դիպուածոյ ընդհանրական կոնդակ առ պատրիարքն Պոլսոյ... Զմանէ կարևոր վարկայ հաղորդել Ձեզ ի գիտութիւն»։

Հայ կաթոլիկների մասին՝ Էրզրումի առաջնորդ Յարութիւն արքեպ. Վեհապետի Պոլիս կանչուելու առթիւ գրում է (1868 մայիսի 13, № 185).

«Հայ-կաթոլիկ պրոպագանդայն, որ միշտ ի վէճս իւր ի վնաս Ազգիս Հայոց հանդիպեալ է ընդդիմութեան օգնութեամբ հիւպատոսին օրհնաբանեալ Ռուսիոյ ի դիմաց յիշատակեալ եպիսկոպոսի, բաց յայսմանէ վառելով նախանձու առ այդպիսի շնորհս պետութեան Ռուսիոյ առ հայ հոգևորականս, բարեպատեհ առիթ ինքեանց համարելով յայս նուագ, ամբաստանեալ են զնմանէ առաջի տեղական փաշայի իբր թէ յանհաւատարմութեան նորա առ կառավարութիւն Տաճկաց, և այս այնու նպատակաւ, զի հեռացուցանելով զնա զրկեսցեն զտեղական հայազգիս յարթուն հովուէ և ի բաց մերժելով զմիջամտութիւնս Ռուսիոյ ի գործս և գոլով պատսպարեալ ի գործակալաց Գաղղիոյ արձակեսցեն յամենայն զօրութենէ խզել զհայս ի ծոցոյ մայրենի եկեղեցւոյ իւրեանց։ Ծանուցեալ զայսմանէ Ձերդ Գերազանցութեան, ես խնդրեմ ի Ձէնջ, Յարգոյ Տէր, ի կարևոր դէպս չթողել զրկել զնա ի պաշտօնէ և այնու զոհել զնա կրից կաթոլիկական պրոպագանդայի...»։

Իգնատիեվի հետ այս նամակագրությունն այնքան մտերմական բնավորություն է ստանում, որ նույն իսկ Կ. Պոլսի այն ժամանակի նշանավոր հայերի կեանքի և վարքի մասին տեղեկությունները նյութ են կազմում այդ թղթակցություններին։

1870-ին Կ. Պոլսի լրագիրները խիստ կերպով յարձակվում էին Գէորգ կաթողիկոսի վրայ, գլխաւորաբար Պոլոժէնիէի մի քանի տրամադրությունների պատճառով։ Այս առթիւ Իգնատիեվին գրած նամակում կաթողիկոսն արդարացնում է իր անձը, թէ ինքն անկարող է փոփոխել տալ ըստ իր կամաց Պոլոժէնիէի այդ տրամադրութիւններն, որոնք ռուսական օրէնքի մաս են կազմում, և իրան դէմ եղած յարձակումներին նա հետևեալ մեկնութիւնն է տալիս. «Ի ժամանակս հետէ ձգտումն երևեալ ի Կ. Պոլիս ի կողմանէ ոմանց ի հիմնել զինքնօրինութիւն Եկեղեցւոյ Հայաստանեայց հեռանալով յԱթոռոյն Էջմիածնի, յամենայն դէպս գտեալ է զիս հակառակորդ հզօր, քանզի յարգելով ի վսեմական տեսութեան զօգուտ և զշահ հոգևոր զաւակաց իմոց, ես օրինակաւ անձինս և բանիւ քարոզութեան ցուցեալ եմ նոցա միշտ, թէ միմիայն ընդ հովանեաւ սրբոյ Աթոռոյն Լուսաւորչի կարող են նոքա ապահովել ի վտանգէ զկրօնական զգացմունս իւրեանց, որք թանգագին են սրտից նոցա»։ Գէորգ վստահացնում է Իգնատիեվին, թէ ինքը նոյն բարեացակամն է, ինչ որ էր ի սկզբանէ. «Ոչ ի գործողութիւնս իմ,—ասում է նա, —և ոչ իսկ ի նպատակի իմում չեն պատահեալ փոփոխութիւն ինչ, վասն զի որպէս յառաջ, նոյնպէս և այժմ արգոյ վասն իմ համարիմ զմտադրութիւն Ձեր, և հաճելի է ինձ լսել օգտաբեր խորհրդոց Ձերոց վերաբերելոց հոգևոր կառավարութեանս...»։ Նոյն նամակում Գէորգ Դ. պատմելով իր կատարած յառաջադիմական գործերն, ինչպէս եկեղեցւ վարչութեան բարեկարգութիւնը, ճեմարանի հիմնարկութիւնն, «Արարատի» հրատարակումն, եկեղեցական ծխական դպրոցների բացումն և այլն, իբրև դրանց նպատակ ցոյց է տալիս այն, որ «յայսպիսի մրցմունս աներկբայ լիցի յաղթութիւն մեր, գերազանցութեամբ երջանկութեան Հայոց Ռուսիոյ քան զՀայս Տաճկաստանի...»*)։

Պոլոժէնիէի փոփոխութեան խնդիրը մեծ անհանգստութիւն էր պատճառում Գէորգ կաթողիկոսին։ Երբ նա Կ. Պոլսից մեկնում էր Էջմիածին, Կ. Պոլսի պատրիարքը ներկայացրել էր նրան Ազգային Ժողովի որոշումն և խնդիրքն, որ հայրապետա-

---

*) Գրութիւն № 279. 1870 սեպտ. 2։

կան Աթոռը բազմելուց յետոյ նա անմիջապէս հարկ եղածը կատարէ Պօլօժէնիէն փոխել տալու հայ ժողովրդական իրաւունքի համեմատ։ Որովհետև դրանից յետոյ անցել էր արդէն 4 տարի և այդ մասին ոչինչ չէր ձեռնարկուել, ուստի Կ. Պօլսում դժգոհութիւնն երթալով աւելանում էր, որի արձագանգ էին դարձել լրագիրներն անձնական յարձակումներով Գէորգ Դ.-ի վրայ։ Կաթողիկոսը վախենում էր, թէ այդ դժգոհների բուն նպատակն էր, ինչպէս ինք գրում էր Իգնատիեվին, «զպաշտօն անուանական կաթողիկոսութեան Սսոյ յանձնել այնպիսւոյ առըն ճարտարի և ծանօթի բնակչաց Պօլսոյ և տեղական կառավարութեան, զի յետ ընդունելոյ զնոյն պաշտօն և գնալոյ ի Սիս, ոչ զկնի բազմաց ինչ ժամանակաց մարթասցի գտանել զելս հնարից, և սնոտի պատճառանօք ինչ տեղափոխիլ ի Պօլիս, առ ի տալ զվերջին հարուած Մայր Աթոռոյս»։ Եւ այս անջատումն այնու մանաւանդ հաւանական էր գտնում, որ մօտաւորապէս նոյն թուականին ճիշդ այդպիսի մի իրողութիւն պատահել էր հայ կաթոլիկների մօտ։ Անտոն արքեպ. Հասունեան մեծ ճարպիկութեամբ յաջողել էր միացնել Լիբանանի պատրիարքական և Կ. Պօլսի նախագահ-արքեպիսկոպոսական աթոռներն և իբրև «պատրիարք կաթողիկեաց Հայոց և կաթողիկոս Տանն Կիլիկիոյ» հաստատուել էր Կ. Պօլսում։ Գէորգ Դ. լրջօրէն երկիւղ էր կրում, թէ Հասունի այս օրինակին կարող էր հետևել մի այլ «այր ճարտար», ընտրուելով նախ Սսի կաթողիկոս և ապա աթոռն այնտեղից փոխադրելով Կ. Պօլիս, որով Թրքահայոց մի որոշ մասը կարող էր անջատել Էջմիածնից։ Ուստի այս պատահականութեան առաջն առնելու համար Գէորգ կաթողիկոս որոշել էր այլ ևս չուշացնել և անմիջապէս ձեռնարկել Պօլօժէնիէի բարեփոխութեան գործին։ Որպէս զի Էջմիածնի ընդհանրական Աթոռի վերին իրաւասութիւնն անխախտ մնայ Ռուսաստանից դուրս գտնուող հայոց վրայ, նա ծրագրել էր այնպիսի մի յանձնաժողովի յանձնել այս գործն, որին պիտի անդամակցէին թէ եկեղեցականներ և թէ աշխարհականներ ինչպէս Ռուսաստանի, այնպէս և արտասահմանի հայերից։ Նա ձգտում էր նոյնպէս, որ այս յանձնաժողովն զբաղուի նաև Թիւրքիայի Հայոց Ազգային Սահմանադրութեան քննութեամբ, որպէս զի կաթողիկոսական ընտրութեան նկատմամբ այս վերջինի բովանդակած յօդուածները յարմարեցուին բարեփոխուած Պօլօժէնիէի տրամադրութիւններին։

Բայց նախ քան իր այս ծրագիրը ռուսական կառավարութեան առաջարկելը՝ Գէորգ իր այս միտքն յայտնում է Իգնա-

տիեվին և Նրանից խորհուրդ է հարցնում*)։

Իգնատիեվ իր պատասխանի մէջ մանրամասն քննելով այս առաջարկութիւնը Նրա իրագործումն անյարմար է համարում և հաւաստիացնում է կաթողիկոսին, թէ Կ. Պօլսում այլ ևս Նախկին դժգոհութիւնը չկայ և լրագրական յարձակումները Նրա և Էջմիածնի դէմ շատ պակասած են։ Կաթողիկոսը համաձայնում է, թէ Իգնատիեվի յառաջ բերած առարկութիւններն իրաւացի են, և թողնում է «Համազգային Ցանձնաժողով» գումարելու միտքը։ Բայց Սիսի «հակաթոռ» կաթողիկոսութեան հարցը հանգիստ չի տալիս Նրան։ Եւ նա դառնապէս գանգատվում է Իգնատիեվին Խրիմեան պատրիարքից։ «Ցայս առաջին նուագ է, որ լսի զի անեզամտութեամբ պատրիարքի Պօլսոյ և ոմանց երէցփոխանաց ժողովոյն, մի ոմն յեպիսկոպոսաց Էջմիածնի Մկրտիչ՝ ընտրեալ լինի ի կաթողիկոսութիւն Սսոյ. ցաւալի է յոյժ, զի պատրիարքն Խրիմեան ըստ պարտուց կոչման իւրոյ և սրբոյ ուխտին և երդմանն, որ ի Մայր Տաճարի սրբոյ Էջմիածնի, ոչ միայն չէ ի գործ եդեալ զփոյթ իւր ի պաշտպանութիւն դարաւոր ժամանակօք սրբացեալ իրաւանց Հայաստանեայց Եկեղեցւոյ խախտելոյ պարզապէս, այլ վստահացեալ իսկ է յԱզգային Ժողովոյ իբրև զիմ Փոխանորդ ճանաչել զայն ընտրութիւն վաւերական...»**)։ Մի տեղ էլ նոյն Նամակում ասում է, թէ «Խրիմեանն այնպիսի իմն վստահութեամբ մղեալ է յայն ապարէզ, որ գոգցես բոլորովիմբ մոռացեալ իցէ զգոյութիւն Ծայրագոյն Հոգևոր Իշխանութեան, յանուն փոխանորդութեան կաթողիկոսի ամենայն հայոց, ի պատրել զժողովուրդն և զքահանայս ինքն միայն ի վերայ իւր առնու զբոլոր իշխանութիւն որոշելոյ զյարաբերութիւնս Նորոգ ընտրեալ կաթողիկոսի ընդ պատրիարքարանի Պօլսոյ և Մայր Աթոռոյս...»։ Խորէն Նար-Բէյին էլ, որ այս ընտրութիւնը ծանուցանելով խնդրել էր օրհնել, Գէորգ յանդիմանական պատասխան է գրում։ Այս խնդիրը կարևորութիւն է ստանում հետզհետէ, և դեսպանն իր տեսութիւնն է գրում Պետերբուրգ, պաշտպանելով ընդհանրապէս Գէորգի հայեցակէտը։ Պետերբուրգում՝ կամենալով աւելի մօտից ծանօթ լինել գործի մանրամասնութիւններին՝ Ներքին գործերի մինիստրութիւնը մի տեղեկագիր է կազմում այս խնդրի մասին և Կովկասի Գլխ. Կառավարութեան միջոցով ուղարկում է Էջմիածին։ Գէորգ բացատրութիւններ է տալիս,

*) Գէորգ կաթ. գրութիւնն Իգնատիեվին 1871 ապրիլ 28, № 91.

**) Գէորգ կաթ. Նամակը Կ. Պօլսի դեսպանին 1871 դեկտ. 15, № 281. Կաթող. Դիւան։

դարձեալ մեղադրում է Խրիմեանին և առթից օգուտ է քաղում Պօլօժէնիէի բարեփոխութեան պահանջը յիշեցնելու համար, որպէսզի արտասահմանի հայոց դժգոհութեան պատճառները վերանալով՝ նրանք «ինքնին փութասցեն բառնալ զհակաթոռսն Սսոյ և Աղթամարայ, որպէս զի առաւել բարձրասցի անուն և նշանակութիւն Էջմիածնի, որ այնքան ցանկալի է և վասն պետութեան մերոյ»*)։

Իգնատիեվ, թէ Էջմիածնի հեղինակութիւնն իբրև Մայր Աթոռ բարձր պահելով Թրքահայերի հետ նրա ունեցած կապն աւելի ամրացնելու և թէ անշուշտ միևնոյն ժամանակ այս միջոցով ռուսական ազդեցութիւնը նրանց վրայ տարածելու համար, 1871-ին միտք է յղանում Կ. Պօլսում հիմնել Էջմիածնատուն, նրան կից ռուս-հայկական դպրոց և ապա, որ աւելի կարևորն է, նաև առանձին Էջմիածնայ Փոխանորդութիւն. այս վերջինն այն պատճառով, որովհետև Գէորգ Դ. հակառակ էր Կ. Պօլսի այն ժամանակի պատրիարք Խրիմեանին, նրան չէր ճանաչում իբրև իր փոխանորդն և իր կողմից յատուկ նուիրակներ էր ուղարկում Կ. Պօլիս, ինչպէս էին Պետրոս եպիսկոպոս Վեհապետեան և Սարգիս եպ. Ջալալեանց։

Երբ կաթողիկոսը ռուսական դեսպանի այս ծրագրին տեղեկանում է, անմիջապէս պատասխանում է նրան և իր համաձայնութիւնն է յայտնում, միայն թէ, առարկում է նա, պէտք է «նախ զՓոխանորդն և զՓոխանորդարանն պատրաստել, զի զհետ եկեսցէ դիւրութեամբ շինութիւն դպրոցին»**)։ Այս կէտի նկատմամբ նրանց միջև տարաձայնութիւն տեղի ունէր։ Իգնատիեվ, ընդհակառակն, գտնում էր, որ աւելի յարմար էր նախ դպրոցի համար շէնք գնել Էջմիածնի անունով, որովհետև Թիւրք կառավարութեան կողմից դպրոցի հիմնարկութեան արգելք չէր սպասվում. և ապա այդ իսկ շէնքի մէջ պէտք էր լռելեայն հաստատել թէ Էջմիածնատունն և թէ Էջմիածնի Փոխանորդութիւնը։ Եւ Իգնատիեվ եռանդով ձեռնարկում է իր այս մտադրութեան իրականացման. դրա համար անմիջապէս գնում է Պէրայում 3000 օսմ. լիրայով Մաղաք Մուրատեանի տունը։ Այս գործի մէջ Իգնատիեվ՝ իրան խորհրդակից ունէր Խորէն եպ. Նար-Բէյին, որ այն ժամանակ Բէշիկթաշ էր ապրում և որին նա յանձնել էր ապագայ դպրոցի ծրագիրն և նախահաշիւը կազմել։ Դպրոցը գիշերօթիկ պիտի լինէր. ըստ այնմ էլ Նար-

*) Անդ.

**) Գրութիւն կաթող. առ Իգնատիեվ, № 250, 24 նոյեմբ. 1871.

Բէյ նախահաշիւ շինելով ենթադրում էր, թէ տարեկան ընդամենը 320,000 ղրուշ (մօտ 30,000 րուբլի) ծախքով կարելի էր 80 գիշերօթիկ աշակերտ պահել։ Նրա հաշուով այս գումարն ամբողջապէս պիտի ծածկուէր աշակերտների թոշակով։ Իգնատիեվ, սակայն, կասկածում է, թէ, գոնէ առաջին 2—3 տարիները կարելի լինի աշակերտական վճարումներով դպրոցի ծախքն ապահովել, ուստի ուզում է իմանալ, թէ Էջմիածինն իր կողմից ինչ նիւթական օժանդակութիւն կարող էր անել։ Գէորգ բացարձակապէս յայտնում է, թէ Էջմիածնից որևէ դրամական նպաստ պէտք չէր սպասել։ Նար-Բէյ դարձեալ պնդում է իր նախահաշուի վրայ և վստահացնում է, թէ առանց դեսպանատնից նոր դրամական զոհողութիւն պահանջելու, միմիայն աշակերտական թոշակներով և մասնաւոր անձերի օգնութեամբ՝ ինք կարող է պահպանել դպրոցը։ Եւ նա ըստ այնմ էլ, Իգնատիեվի հաւանութեամբ, կազմում է դպրոցի հիմնարկութեան ծրագիրը*)։

Իգնատիեվն այս ծրագիրն ուղարկում է Գէորգին և խնդրում է նրա շուտափոյթ հաւանութիւնն, որպէս զի դպրոցը բացուի 1873 թ. սեպտեմբերին։ Բայց այն ժամանակ, երբ նա կաթողիկոսից համակրութեան և համաձայնութեան գիր էր սպասում, նրանից այնպիսի մի պատասխան է ստանում, որ բոլորովին շփոթեցնում է Իգնատիեվին։ Գէորգ յայտնում է նրան,

---

*) Այս ծրագիրը հետևեալն էր.

Ա. Դպրոցը պիտի բացուի կաթողիկոսի թոյլտուութեամբ. նրա ամբողջ պատասխանատուութիւնն և ղեկավարութիւնը յանձնվում է Խորէն եպ. Նար-Բէյին։

Բ. Դպրոցը պիտի համարուի Էջմիածնայ տուն։

Գ. Տեսուչը (Նար-Բէյ) պիտի կազմէ ուսման ծրագիրը Թրքահայոց պէտքերի համաձայն։ Նա պիտի նշանակէ ուսուցիչներ։

Դ. Որովհետև գնուած տան մէջ 40 աշակերտ հազիւ կը տեղաւորուեն, ուստի տարեկան ծախքը 40,000 ֆրանքը պիտի չանցնի։

Ե. Եթէ կաթողիկոսն ուզէ 10 աշակերտ պահել իր ծախքով, տարեկան 800 ֆրանք պիտի վճարէ ամեն մէկի համար։

Զ. Դպրոցական ուսումնավարձի համեմատաբար մատչելի լինելն և այլ նպաստաւոր հանգամանքները վստահացնում են, որ դպրոցը յաջողութիւն կունենայ։

Է. Դեսպանատունը դպրոցը պիտի ընդունի իր պաշտօնական հովանաւորութեան ներքոյ։

Ը. Դեսպանատունը պիտի հոգայ դպրոցի բացման և կահաւորման վերաբերեալ սկզբնական ծախքերը։

Թ. Տարին 2 անգամ կաթողիկոսին տեղեկագիր պիտի ուղարկուի դպրոցի վիճակի մասին։

թէ նախ Էջմիածինն իր կողմից որևէ դրամական նպաստ տալ անկարող է, և ապա, որ գլխաւորն է, պայման է դնում, որ դպրոցը բացուի Էջմիածնի անունով և յանձնուի «տեղական (Կ. Պոլսի) հայ հասարակութեան»։ Բացի դրանից տեսուչն էլ պէտք է լինի ոչ թէ Իգնատիեվի համակրած Խորէն Նար-Բէյ եպիսկոպոսն, այլ Արմաշի վանքի վանահայր Խորէն վ. Աշըգեան։ Միևնոյն ժամանակ Գէորգ մի ծրագիր էլ է պատրաստում և ուղարկում Իգնատիեվին, որի համեմատ՝ այս դպրոցը պիտի լինէր պարզապէս «ժառանգաւորաց դպրոց» և զուտ հոգևորականներ պատրաստելու պիտի ծառայէր, առաջին տարին էլ 20 աշակերտներով պիտի բաւականանար։ Իգնատիեվ շատ էր նեղացած այս պատասխանից, որ բոլորովին ուրիշ հողի վրայ էր դնում ամբողջ ձեռնարկութիւնը։ Նա պատասխանում է անմիջապէս, թէ ինք չափազանց զարմացած է, որ կաթողիկոսը զգալի կերպով փոխել է իր նախկին մտադրութիւնը*), և այս առթիւ նա պարզ ասում է, թէ ինչ էր ռուսական կառավարութեան հայեացքը. «Կայսերական կառավարութիւնը,—բացատրում է Իգնատիեվ,—Կ. Պոլսում Էջմիածնատուն և նրան կից դպրոց հաստատելու համար դրամական միջոցներ շնորհելով՝ նպատակ ունէր ոչ միայն բարիք անել հայ պատանիներին, այլ և Ամենայն Հայոց Կաթողիկոսի բարոյական ու կրթական ազդեցութիւնը բարձրացնել, հայ ժողովուրդն Էջմիածնի հետ միացնող կապը զօրեղացնելով։ Էջմիածնատունը կարող էր, դեսպանատան պաշտպանութիւնից օգտուելով, առաջին յարմար առթին Փոխանորդութիւն հիմնել...։ Բայց Ձեր առաջարկած ձևով դպրոց հաստատելով Էջմիածնատան կերպարանքը փոխվում է. դպրոցն այն դիրքի մէջ է դրվում, ինչ որ ունեն Կ. Պոլսի հայոց միւս դպրոցներն, որով դեսպանատունը զրկըվում է նրա պէտքերը հոգալու և ի պահանջել հարկին նրան պաշտպանութիւն անելու հնարաւորութիւնից։ Այս ձևով դպրոցը կախուած պիտի լինի պատրիարքարանից, իսկ պատրիարքարանի Խառն Ժողովի անդամները թրքական պաշտօնեաներ են...»։ Եւ վերջապէս դեսպանը հարցը դնում է կտրուկ կերպով. «...Ես անյարմար եմ գտնում Էջմիածնատունն և դպրոցը

*) «Не скрою отъ Вашего Святѣйшества, что я былъ крайне удивленъ усмотрѣвъ изъ этого письма, что Ваши намѣренія значительно измѣнились и расходятся какъ съ первоначальною цѣльго учрежденія такъ и съ прочими Вашими видами,—насколько они мнѣ извѣстны...»։ Ռուսական դեսպանի գրութիւնը Գէորգ Դ.-ին 1873 թ. յուլիսի 30-ին. (Կաթող. Դիւան Էջմիածնի)։

յանձնել Արմաշի վանքին. ուստի եթէ Դուք անկարելի էք գտնում ընդունել այն հիմունքն, որ ես բացատրել եմ նախորդ թղթակցութեանս մէջ, և որոնց Դուք մինչև հիմա համաձայն էիք, խոնարհաբար խնդրեմ իմացնէք ինձ։ Որովհետև այն ժամանակ ես լաւագոյն կը համարեմ ծախել գնուած տունն և դրա գումարը պահել ինձ մօտ՝ մինչև որ Ձեր Սրբութիւնն հնարաւորութիւն տեսնէ հիմնել այստեղ իսկապէս Էջմիածնատուն և դպրոց, որոնք կախում ունենային միմիայն Էջմիածնից»։

Իգնատիեվի այս պաշտօնական գրութեան Գէորգ պատասխանում է հոկտեմբերի 7-ին (1873) մի մտերմական նամակով, ուրտեղ ծածկում է իր բուն միտքն և աշխատում է նախ հաւատացնել, թէ իր մտադրութիւնները փոխուած չեն, բայց վերջ ի վերջոյ ստիպուած է լինում յայտնել իբրև արդարացում իր վարմունքին, թէ «տեղական հանգամանքները փոխուել են», որից դեսպանն իրաւամբ եզրակացնում է, թէ այն նպատակն, որի համար կաթողիկոսն և դեսպանը կանխաւ համաձայնութիւն էին կայացրել, այլ ևս գոյութիւն չունէր Գէորգի համար։ Եւ իրօք, Գէորգ կաթողիկոս ռուսական միջամտութեան էր դիմել, որովհետև, ինչպէս բացատրեցինք, վախենում էր այն ժամանակ, թէ Սիսի Աթոռն իր մի ճարպիկ գահակալի շնորհիւ կարող էր իր իրաւասութիւնն ընդարձակել և տարածել մինչև Կ. Պօլիս, ի վնաս Էջմիածնի դարաւոր իրաւունքի։ Այս նպատակով էլ նա, Մայր Աթոռի իրաւունքն և հեղինակութիւնն անխախտ պահելու համար, որոշել էր մի անկախ Փոխանորդութիւն հիմնել Կ. Պօլսում, Իգնատիեվի աջակցութեամբ։ Էջմիածնատունն և դպրոցն այս վերջնական նպատակի նախաշաւիղներն էին։ Բայց երբ Խրիմեան, որի վրայ Գէորգ ամենևին վստահութիւն չունէր, հրաժարվում է պատրիարքութիւնից, Սիսի մասին նրա երկիւղը գրեթէ փարատվում է։ Միևնոյն ժամանակ Կ. Պօլսի որոշ շրջաններից հաւանականաբար զգուշացնում են նրան՝ առանձին Փոխանորդութեան յառաջ բերելիք պառակտման մասին։ Իսկ այնուհետև երբ Վարժապետեան տեղապահ և ապա պատրիարք է ընտրվում՝ Գէորգ բազմաթիւ համակրալից կոնդակներ է ուղղում նրան՝ «քաջարթուն, սիրեցեալ» և այլն մակդիրներով։ Ահա այս էր անշուշտ «տեղական (Կ. Պօլսի) հանգամանքների փոփոխութիւնն», որին ակնարկում էր Գէորգ՝ Իգնատիեվին ուղղած իր նամակներում։ Կաթողիկոսը մինչև անգամ պահանջում է, որ տան գնումից աւելցած մօտ 10,000 րուբլին Իգնատիեվ Էջմիածին ուղարկէ կամ այս վերջինի հաշուին Արևելեան Երկաթուղիի վիճակախաղի թղթեր գնէ, բայց

Իգնատիեվ մերժում է թէ մէկն և թէ միւսը։ Նա դեռ ևս աշխատում էր համոզել կաթողիկոսին համակերպել իր մտքին և նախ Էջմիածնատուն ու դպրոց բանալ։

«Փոխանորդութիւն հաստատելու մասին մեր հանդիպած դժուարութիւնները,—գրում է նա,—յառաջ եկան նրանից, որ Թիւրք կառավարութիւնը, Կ. Պօլսի պատրիարքն (Խրիմեան) և սրա համախոհները ձգտում էին հայերի համար Էջմիածնի տեղ Կ. Պօլիսը դարձնել ծանրութեան կամ ձգողութեան կենտրոն, չնայելով որ ժողովուրդը յարած է Էջմիածնի։ Ի նկատի ունենալով Սարգիս եպ. Ջալալեանցի դրութիւնն, որ ամբողջ ժամանակ կեղծ կացութեան մէջ էր գտնվում այստեղ, և որպէս զի այս վիճակը չկրկնուի ապագայում, ես համոզուեցի, որ Կ. Պօլսում Էջմիածնի Փոխանորդութիւն հիմնելը կարելի է միայն այն ժամանակ, երբ Բ. Դուռն և հայերն այս մտքին աստիճանաբար ընտելանան. Էջմիածնի Աթոռի Փոխանորդի յանկարծակի Կ. Պօլիս երևալը թշնամութիւն պիտի յարուցանէր այստեղ։ Ուստի այս գործը թէ հաստատուն հողի վրայ դնելու և թէ Բ. Դրան կամ որևէ օտար տէրութեան ներկայացուցչի և կամ նոյն իսկ մեզ հետ թշնամաբար վարուող հայերի ինտրիգներից (intrigue) պաշտպանելու համար էր, որ ես ուզում էի նախ Էջմիածնատուն և նրան կից էլ դպրոց հաստատել։ Այս իրագործուելուց վերջը՝ Փոխանորդութեան խնդիրն երկրորդ տեղը պիտի բռնէր և Կ. Պօլսում Էջմիածնի եպիսկոպոսի գտնուելը ոչ մի կասկած կամ վտանգ չէր յարուցանի։ Նրա ներկայութիւնը շատ բնական պիտի երևար, քանի որ բնականաբար նա պիտի զբաղուէր Էջմիածնատան և դպրոցի տնտեսական գործերով և այլն։ Յետոյ՝ Էջմիածնատան մէջ գտնուող եպիսկոպոսը կարող էր դառնալ Ձեր Փոխանորդն, եթէ Դուք այդ օգտակար և անհրաժեշտ համարէիք։ Բայց այս ծրագիրն հնարաւոր էր իրագործել միայն այն հանգամանքում, եթէ Էջմիածնատան և դպրոցի կառավարութիւնը գտնուէր անպատճառ այնպիսի մի անձի ձեռքում, որ այստեղի հայոց պատրիարքից և Խառն Ժողովից կախում չունենար, այլ ենթարկուած լինէր միմիայն Ձեր Սրբութեան։ Միայն այս հանգամանքում Կայսերական Դեսպանատունը պիտի կարենայ իր պաշտօնական հովանաւորութեան տակ ընդունել Էջմիածնատունն և դպրոցն իբրև այնպիսի հաստատութիւններ, որոնք հիմնուած են ռուսական պետական գանձարանի միջոցներով»*)։

*) Իգնատիեվի գրութիւնը՝ 10 նոյեմբ. 1873, № 636.

Որչափ և Իգնատիեվ իրաւացի էր իր տեսակէտով և հիմնվում էր կանխաւ նրանց մէջ կայացած համաձայնութեան, այնու ամենայնիւ Գէորգ չէ ընդունում նրա առաջարկութիւնը։ Այն ժամանակ դեսպանն էլ ծախում է դպրոցի համար գնուած տունը, գումարը պահելով դեսպանատան կարգադրութեան տակ, մերժելով ուղարկել այդ՝ կաթողիկոսին, ինչպէս նա պահանջել էր։ Բացի դրանից՝ Արտաքին Գործերի Մինիստրութեան Իգնատիեվի միջնորդութեամբ յատկացրած նոր գումարը, 15,000 րուբլի, որ պիտի ծախսուէր Կ. Պոլսում Էջմիածնի Փոխանորդութիւն հաստատելու, այլ ևս նա չէ պահանջում Պետերբուրգից։

Տարի ու կէս վերջն, այն է՝ 1875-ին, Իգնատիեվ մի վերջին փորձ ևս է անում և դարձեալ յուզում է Էջմիածնատան և դպրոցի խնդիրը· նա պնդում է, թէ դպրոցի հիմնարկութիւնը ոչ մի դժուարութեան չի հանդիպի նիւթական միջոցների կողմից։ Ռուսական գանձարանի տալիք նպաստն, աշակերտներից ստացուելիք ուսումնավարձն և մասնաւոր նուիրատուութիւններ՝ կատարելապէս կապահովեն դպրոցի տնտեսական մասը։ Իգնատիեվի համար թէև աւելի հաճելի էր, որ իր բարեկամ և խորհրդակից Խորէն Նար-Բէյին յանձնուէր գործի ղեկավարութիւնը, բայց քանի որ Գէորգ Դ. վստահութիւն չունէր նրա վրայ, ուստի դեսպանը գրում է կաթողիկոսին, որ իր վստահութիւնը վայելող մի այլ հայ եկեղեցականի, օրինակի համար՝ Ներսէս պատրիարքին կամ Խորէն Աշըգեանին, յանձնարարէ, որ դեսպանատան հետ համաձայնութիւն կայացնէ, և օր յառաջ դպրոցը բացուի։ «Յոյս ունեմ,—վերջացնում է նա,—որ այս անգամ Ձեր Սրբութիւնն այլ ևս որևէ արգելք չի գտնի դպրոցի հիմնարկութեան, որը միայն կարող է յառաջ տանել նախ Էջմիածնատան, ապա և, ժամանակով, Փոխանորդութեան հաստատումը»*)։

Այս նամակն ստանալով Գէորգ ըստ այնմ հրահանգ է տալիս Ներսէս պատրիարքին, բայց նրա այս կոնդակից յառաջ Վ. վարդապետ (Վահրամ Մանկունի) մասնաւոր նամակով հաղորդում է պատրիարքին Գէորգի հայեացքն այս մասին։

Ներսէս պատրիարք մայիսի վերջերը (1875) անձամբ գնում է Իգնատիեվի մօտ և երկարօրէն տեսակցում է նրա հետ։ Իգնատիեվ դարձեալ մեծ համակրանօք է վերաբերվում այս խնդրին և աշխատում է իր կողմից ամեն դժուարութիւն հար-

*) Իգնատիեվի նամակը, 22 մարտի 1875, № 200.

Թել իր այս ռուս-հայկական դպրոցի գաղափարն իրականացած տեսնելու համար։ Նա համաձայնվում է, որ գնուելիք նոր դպրոցական շէնքը կալուածագրուի Էջմիածնի անունով և համարուի Էջմիածնի սեփականութիւն (թէև գումարը ռուսական գանձարանից պիտի վճարուէր), տեսուչը կամ վերատեսուչը նշանակուի կաթողիկոսի կողմից։ Նա նոյն իսկ ուսման ծրագրի կազմելն էլ յանձնում է Ներսէս պատրիարքին. իր կողմից այս պայմանն է միայն դնում, որ դպրոցը միմիայն հոգևորականներ կրթելու նպատակ չունենայ, այլ այնտեղ թէ հոգևորական կոչման հետևող և թէ աշխարհական աշակերտներ սովորեն, և, որ գլխաւորն է, դպրոցում պարտաւորիչ լինեն այն լեզուներն, որոնք հայոց վրայ տիրող երեք տէրութիւնների պետական լեզուներն են, այսինքն ռուսերէնը, թիւրքերէնն և պարսկերէնը։ Ներսէս այս պայմանները գոհացուցիչ է գտնում, զեկուցանում է Խառն Ժողովին ու մինչև իսկ «ուրախ եղև յոյժ» ասում է ինքն և ըստ այնմ էլ հաղորդում է Էջմիածին*)։

Այս երկար բանակցութիւնները դեռ չէին աւարտել, երբ Թիւրքիայում քաղաքական հանգամանքներն այն կերպարանքն առան, որ թէ ռուս-հայկական դպրոցի, թէ Էջմիածնատան և թէ Էջմիածնի Փոխանորդութեան խնդիրները տեղի տուին նոր, անհամեմատ աւելի մեծ հարցի, Հայկական Խնդրի առջև....։

Իգնատիևի մասնակցութիւնը Կ. Պոլսի հայոց հասարակական գործերում՝ դրանցով չէ սահմանափակվում։ Նա մեծ, շատ աւելի արդիւնաւոր միջամտութիւն է ունեցած Պէրայի հայոց գերեզմանատան հարցում։ Այս ընդարձակ հանգստարանը գտնվում է քաղաքի եւրոպական մասի համարեա կենտրոնում, Մեծ Փողոցի վրայ երկար տարածութեամբ, և, որ գլխաւորն է, երկու ծայրերից շրջապատուած է զինուորական դպրոցով և զօրանոցներով։ Ի նկատի ունենալով մանաւանդ վերջին հանգամանքը, Թիւրք կառավարութիւնը 1872-ին շատ աշխատեց գրաւել այս տեղն և զօրքի կրթավայրի կամ գոնէ հասարակաց պարտէզի վերածել։

Պէրայի հայ համայնքը վրդովուած դիմել էր Խրիմեան պատրիարքին, բայց սրանից՝ իր սպասած ազդու միջամտութեան փոխարէն միմիայն անտարբերութիւն գտնելով, ինչպէս գանգատվում էին իրանք, Երրորդութեան եկեղեցու (Պէրայի) հոգաբարձութիւնն և քահանաները պատրիարքից դժգոհ՝ գրել էին ուղղակի Էջմիածին և կաթողիկոսի պաշտպանութիւնը

*) Ներսէս պատրիարքի նամակը Գէորգ Դ. կաթողիկոսին, Կ. Պոլիս, 7 յունիսի 1875. (Կաթ. Դիւան)։

խնդրել։ Նրանք ոչ մի պայմանով չէին կամենում գերեզմանատունը զիջել կառավարութեան, և միևնոյն ժամանակ այս մասին, աղերսագիրներ էին ներկայացրել մեծ վէզիրին և նոյն իսկ սուլթան Ազիզին։ Կաթողիկոսն, որ արդէն լարուած յարաբերութեան մէջ էր Խրիմեանի հետ, այս դէպքի պատճառով աւելի ևս զայրանում է այս վերջինի վրայ և Իգնատիեվին է դիմում ջերմագին խնդրելով Նրա միջամտութիւնը։ Դեսպանը յանձն է առնում միջամտել այս գործին յօգուտ հայոց։ «Ես,—գրում է Իգնատիեվ կաթողիկոսին,—միջնորդեցի մեծ վէզիրի մօտ ի նպաստ հայոց և ինչ որ հնարաւոր էր կատարեցի՝ սուլթանին տրուած աղերսագրի յաջողութեան համար»։ Սուլթանը համաձայնվում է գերեզմանատունը թողնել հայոց ձեռք, «բայց,—շարունակում է դեսպանը,—ինչպէս երևում է, Թիւրք կառավարութիւնն առաջին յարմար առթից պիտի օգուտ քաղէ այս տեղը մօտակայ զօրանոցների համար կրթավայր դարձնելու։ Ինչ որ էլ լինի, ես ըստ առաջնոյն պիտի աշխատեմ հայ հասարակութեան շահերը պաշտպանել»*)։

Երբ այսպէս, շնորհիւ գլխաւորաբար Իգնատիեվի, գերեզմանատունը մնում է իր նախկին վիճակում, հայոց սեփականութիւն, պէրացիք իրանց իրաւունքն աւելի ևս ամրացնելու և ապագայ գրաւման վտանգն ևս մեկուսացնելու համար աշխատեցին համոզել թէ կաթողիկոսի և թէ Ներսէս պատրիարքի միջոցով ռուսական դեսպանին, որ սա իր ծրագրած դպրոցն և Էջմիածնատունը կառուցանէ այդտեղ, Պէրայի գերեզմանատան հողի վրայ։ Իգնատիեվ այդ ևս ընդունում է և գրում է Գէորգին, յիշեցնելով Նրան որ միմիայն իր միջամտութեան արդիւնքն է գերեզմանատան հայոց ձեռքը մնալը. «Եթէ Ձեր Սրբութիւնը կամենում է, որ դպրոցը շինուի անպատճառ գերեզմանատան հողի վրայ, բարեհաճեցէք պատուիրել Ներսէս պատրիարքին, որ Թիւրք կառավարութեան դիմէ և Ձեր անունից արտօնութիւն խնդրէ այնտեղ դպրոց հիմնելու։ Կայսերական Դեսպանատունն իր կողմից Ներսէս պատրիարքի այս խնդիրքը պիտի պաշտպանէ, և ես յոյս ունեմ, թէ մեր ջանքերը յաջողութեամբ կը պսակուին»**)։ Այս անգամ ևս Իգնատիեվի միջամտութիւնը տարբեր հետևանք է տալիս։ Ներսէս պատրիարք, ըստ Նրա խորհրդի, դիմում է կառավարութեան և ստանում է

---

*) Իգնատիեվի նամակը կաթողիկոսին, 6 յունուարի 1873.

**) Իգնատիեվի այս պաշտօնական գրութիւնը կրում է № 714, 1875 հոկտ. 4 թուականը։

1876-ին արտօնութիւն... Գալակէօզեան գերդաստանի անունով դպրոց կառուցանելու և ոչ թէ Իգնատիևի յղացած Էջմիածնատան ուսումնարան։ Ըստ երևոյթին Ներսէս պատրիարք և իր խորհրդակիցներն այդպէս էին վարուել համաձայնութեամբ նաև կաթողիկոսին, որ հետևեալն էր գրել պատրիարքին այս մասին. «Յանձն առնեմք խոհեմութեան ձերոյ, որպէս զի նախ խորհրդակցեալ ընդ ազգասէր անդամս Վարչութեան և ընդ այլ հեռատես ազգայինս, եթէ ոչ ունիցի զվնասակար ինչ հետևանս և ըստ ամենայնի օգտակար դատեսցի, զարժանն հոգացեալ խնդրեսջիք ի Բ. Դրանէ օսմանեան բարեխնամ կառավարութեան զլուծումն առ ի շնորհել զհրաման հիմնելոյ զդպրանոց ժառանգաւորաց ի վերայ գետնոյ գերեզմանատան Հայոց Բէբայի, որում խոստանայ վսեմափայլ դեսպանն օգնել ի յաջողութիւն ստացման հրաման Բ. Դրան»*)։

Եւ ահա այսպէս Իգնատիևի ծրագիրները հայոց նկատմամբ՝ անյաջողութեան են մատնվում։ 1873-ից յետոյ Գէորգ կաթողիկոսի յարաբերութիւնները ռուսական կառավարութեան հետ սկսել էին լարուել Պօլօժէնիէի բարեփոխութեան, դպրոցների վրայ պետական հսկողութեան և այլ մի քանի երկրորդական խնդիրների պատճառով, որ հաւանականաբար կողմնակի կերպով ազդած կը լինի և նրա՝ Իգնատիևի հետ ունեցած յարաբերութիւնների վրայ։ Այս խնդրում փոքր դեր չէ խաղացած Վ. վ. Մանկունի, որի ազդեցութիւնը կաթողիկոսի վրայ ակներև էր։ Միևնոյն ժամանակ Ներսէս պատրիարք և Կ. Պօլսի ազգային շրջանում որոշ ազդեցութեան տէր հայերն ևս, ի բնէ հակառուսական զգացումներով տոգորուած, ոչ միայն ընդ յառաջ չէին գնում Իգնատիևի ձեռնարկութիւններին, այլ խանգարում էին նրանց։ Սակայն կարճ ժամանակ վերջը, շնորհիւ ռուս-թրքական պատերազմի, հանգամանքներն այնպէս պիտի փոխուէին, որ նոյն Վարժապետեան և իր խորհրդակիցների խումբը ստիպուած եղան փոխել իրանց այս քաղաքականութիւնը։ Նրանք ոչ միայն խոնարհ աղերսով դիմեցին նոյն Իգնատիևին, այլ ամեն ջանք գործ դրին համոզելու համար նաև Գէորգ կաթողիկոսին և իր մտերիմ խորհրդական Մանկունի եպիսկոպոսին, որ սրանք ևս փոխեն իրանց ընթացքը յանուն նորածին, աւելի բարձր, կենսական ազգային շահերի։

---

*) Գէորգ Դ.-ի նամակը Ներսէս պատրիարքին, 1875 հոկտ. 29, № 358.

## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

*Իգմիրլեան Էջմիածնում.—Գէորգ կաթողիկոսի և Մանկունի եպիսկոպոսի վերաբերմունքը.—Սերվիչէնի նամակը.—Նար-Բէյը Պետերբուրգում.—Հայաստանի ինքնավարութեան ծրագիրը.—Ալէքսանդր Բ. կայսրն և Նար-Բէյ.—Ռուսահայերն և ռուս լրագիրները Հայկական Խնդրի մասին։*

*Ինչպէս Ա. Գլխում պատմեցինք, Կ. Պոլսի ազգային վարչական շրջաններն անհրաժեշտ էին գտնում, որ Գէորգ Դ. կաթողիկոս միջամտէ Հայկական Խնդրին և Թրքահայոց աղերսն անձամբ կամ պատգամաւորութեան միջոցով ներկայացնէ ռուսաց կայսեր և ապա եւրոպական լիազօրների համագումարին։ Կաթողիկոսին համոզելու դերը յանձնուած էր Մատթէոս եպ. Իզմիրլեանին, որ շտապօք պիտի մեկնէր Էջմիածին։ Ներսէս պատրիարք՝ 1878 փետր. 4 թուով Իզմիրլեանի ձեռքը տուած յանձնարարական նամակում Գէորգին գրում էր, թէ Կ. Պոլսի պատգամաւորը «ունի բազումս խօսել ընդ Վեհափառութեանդ,* կսմաւ ամենեցուն, եկեղեցական եւ աշխարհական ազգայնոց...։ *Յուսով եմ զի արժանի լինելոց են թէ Մատթէոս եպիսկոպոս և թէ պատգամաւորքն երկոքին եկեղեցականք*), որք դիմել ունին առ ոտս Վեհափառութեանդ»։*

*Իզմիրլեան ճանապարհ չգտաւ դէպի Կովկաս, անմիջապէս մեկնելու համար։ Պատերազմը նոր դադարած լինելով, Կ. Պոլսի և Կովկասի միջև կանոնաւոր հաղորդակցութիւն դեռ չէր սկսած։ Երթեւեկութիւն կար միայն Կ. Պոլսի և Օդեսսայի միջև, բայց այստեղից դէպի Փօթի (այն ժամանակ Կովկասի ամենայարմար նաւահանգիստը) դեռ շոգենաւ չէր բանում։ Իզմիրլեան, տեսնելով որ իր մեկնումն այս կերպով շատ է ուշանում, անհրաժեշտ համարեց անմիջապէս նամակով գործի էութիւնը մանրամասն պարզել Վահրամ եպ. Մանկունուն, իբրև կաթողիկոսի մտերմին։ Վարժապետեանն էլ հարկաւոր գտաւ իր կողմից դարձեալ գրել կաթողիկոսին փետրուարի 13-ին, թէ «ի նամակէ Մատթէոս եպիսկոպոսի և այլոց, որք այդր են**), Վեհափառութիւն Ձեր կարող է իմանալ զխորհրդոց ազգիս», և ապա որոշ կերպով ասում է, թէ «Ազգն խնդրէ ի Վեհափառութենէդ դիմել* անձամբ առ Կայսրն *նախ քան, կամ եթէ չէ հընար՝ գէթ ի պահու գումարման դեսպանախորհրդոյն և շնորհ*

---

*) *Այս պատգամաւորներն էին՝ Խրիմեան և Նար-Բէյ։*

**) *Ակնարկում է արմաշեցի Ներսէս վարդապետին։*

խնդրել ի Նմանէ վասն Հայաստանի, որպէս առ այլս...»։ Եւ որովհետև Կ. Պոլսում գիտէին, որ Գէորգ Դ. հակամէտ չէր Ռուսիայի օգնութեան դիմելուն, թէև այնչափ էլ ռուսատեաց չէր, որչափ Մանկունին, «աշակերտն Նորին Ս. Օծութեան», որի ազդեցութեան տակ էր գտնվում կաթողիկոսն, ուստի Իզմիրլեան աշխատում էր Մանկունու վրայ ազդել, որպէս զի այս միջոցով Գէորգ Դ. հետևի Կ. Պոլսից տրուած խորհուրդներին։ Նա գրում էր Մանկունուն.

«Ժամանակին ըրածը ոչ ոք կրնայ. ընել. ժամանակը շատ բան կը փոխէ. պարագաներուն և դէպքերուն պէտք է հնազանդինք. մեր հին ընթացքը փոխելու ենք. մեր խորագիտութիւնը և շրջահայեցութիւնը պահելով դիմելու ենք կայսեր։ Այսօր Թիւրքիա անոր ոտից ներքև է. մէկ մեծ ու նշանաւոր մասը կորոյս. ասիական մասին ալ մենք տէր ըլլալու ջանալու ենք։ Թիւրքիա այդ մասին մէջ մնայ ալ, այսուհետև Ռուսիոյ խոնարհ ծառան է։ Ամեն պարագային մէջ Ռուսիոյ պաշտպանութեանը կը կարօտինք, փութանք միշտ նորա համակրութիւնն ու սէրը գրաւել. փութանք այս անգամ բան մ'ըլլալ, կամ գէթ ապագայի նախապատրաստութիւն ընել, Հայկական Խնդիրն այժմէն հանելով, և օր մը, որ շատ չպիտի ուշանայ, երբ Ասիական Թիւրքիոյ խնդիրն ելնէ (եթէ այս անգամ չելնէ) մեր երկրին վրայ մեր բաժնին տէրն ըլլանք»*)։

Այս նամակը յղելուց մի քանի օր յետոյ Իզմիրլեան ինքն ևս հնարաւորութիւն ունեցաւ մեկնելու և նա մարտի սկիզբներն արդէն Էջմիածնումն էր։ Այստեղ Իզմիրլեանի նոյն իսկ առաջին քայլերը Մանկունի եպիսկոպոսի ընդդիմութեանը բաղխեցան։ Վահրամ եպ. ուզեց, որ Իզմիրլեան իր յանձնարարականները տայ նրան, որ նա, Մանկունին, տանի կաթողիկոսին և այս վերջինի պատասխանը բերէ։ Մանկունին պատճառաբանում էր, թէ կաթողիկոսը հիւանդ է և անկարող է ընդունել։ Բայց Իզմիրլեան չզիջեց այս առարկութիւնների առջև և Պետրոս եպիսկոպոսի միջոցով մի զեկուցագիր ներկայացրեց կաթողիկոսին և խնդրեց, որ անձամբ ընդունի իրան, յոյս յայտնելով որ կաթողիկոսը «մինչև իսկ իր անձնական տկարութեան ժամանակ Հայոց Ազգին այս կենաց և մահու խնդրոյն լուծմանն համար կը հաճի ի գործ դնել իւր հայրապետական սրբազան պաշտօնը...»։**)։ Գէորգ Դ. անմիջապէս հրամայեց, որ

*) Իզմիրլեանի նամակը Մանկունուն, 13 փետր. 1878.

**) Իզմիրլեանի զեկուցագիրը, 10 մարտի 1878 (Կաթող. Դիւան)։

Իզմիրլեան ներկայանայ իրան։ Այս տեսակցութիւնն և նրան հետևող ուրիշ տեսակցութիւններն ոչ մի դրական արդիւնք չը տուին։ Էջմիածնի բարձրագոյն հոգևոր իշխանութիւնն «իր ընթացքը չփոխեց» և Իզմիրլեան ստիպուած եղաւ ձեռնունայն վերադառնալ կաթողիկոսի հետևեալ խուսափողական պատասխանովը յանուն պատրիարքի.

«Յանցելում եօթնեկի եկն եհաս այսր ի Ս. Էջմիածին հոգեզգօն Մատթէոս եպիսկոպոս Իզմիրլեան հոգևոր որդի մեր, մինչ մեք դառնապէս չարաչար ի բազմատագնապ վիշտս, կըրկնատեսակ անձնական տկարութեան յոգիս ապաստան եղեալ, և յետ աւուրց՝ ի թեթևանալ ցաւոցս դոյզն ինչ, ներկայացեալ մեզ պատմեաց ի դիմաց Ձերոց զհանգամանաց փափուկ խընդրոյն զոր ակնարկէք յերկոսին գրութիւնքս Ձեր ի թուագրեալս ի 4-ն և ի 13-ն փետրուար ամսոյ անցելոյ։ Կամելով մեր ընդարձակագոյնս լսել ի բերանոյ նորա՝ քանի քանիցս խօսակցեալ նմա և ապա աւանդեալ, որ ինչ հարկ և կարևոր թուէր մեզ յօգուտ Ազգի և Եկեղեցւոյ Հայաստանեայց, թոյլատրեցաք նմա վերադառնալ առ Ձեզ առ ի հաղորդել սրբազնութեան Ձերում զբարենպատակ դիտաւորութիւնս մեր և զպատասխանիս»*)։

Իզմիրլեան ապրիլի սկիզբները վերադարձաւ Կ. Պօլիս և պատմեց այնտեղ իր գտած անյաջողութիւնն Էջմիածնում։ Երբ այս վիճակն յայտնի եղաւ Կ. Պօլսում, Գէորգ կաթողիկոսի հին ծանօթները հարկաւոր համարեցին իբրև վերջին փորձ իրանց կողմից ևս ուղղակի կաթողիկոսին դիմելով փարատել նրա տարակուսանքն և բացատրել անկեղծօրէն իրերի դրութիւնը։ Շատ հետաքրքրական է այս առթիւ ամենից յարգուած մի պատկառելի ազգային գործողի, Սահմանադրութեան ամենահին սիւներից մէկի գրածը Գէորգին։ Ահա ինչպէս էր բացատրում այս նշանաւոր հայը, դոկտոր Սէրվիչէն, պօլսական հայեացքն և ուղղութիւնը 1878 ապրիլ 12 թուակիր իր նամակում։

«Ինձ կը թուի, որ որչափ որ Ձեր Սրբազնութիւնը գլխ կը ճանչնէ, նոյնչափ ալ ես Ձեր Սրբազնութիւնը, իր սիրտը բոլոր հանգամանքներով։ Ցաւալին այն է, որ մէկզմէկէ ի հեռու, ես քաջ տեղեկութիւն չունիմ Ձեր կողմի պարագաներուն, ինչպէս ալ Ձեր Սրբազնութիւնը մեզմէ հեռանալէն ետքը այստեղի պարագաներու փոփոխութեանց....։ Ուստի ինծի պարտք կը համարիմ ինչ որ գիտեմ մեր կողմի պարագաներուն վրայ՝

---

*) Էջմիածնի Կաթ. Դիւան։

պարզապէս պատմել, Ձեր խոհականութեան ձգելով բռնուելիք կամ արդէն բռնուած ընթացքներն, վասն որոյ դատողութիւն ընել։ Նախ որ Ձեր գիտցած պարագաներն անյայտ եղած են այն օրէն, որ Ֆուատ և Ալի մեռան, առանց մէկը ձգելու, որ զիրենք շարունակէ. ասոր տեղը երևան ելած է գայմագամ (?) պարագաները, այսինքն դարերէ ի վեր այստեղի ժողովուրդը խումբ խումբ զատ կեանք վարելէն ետքը փորձ մը եղած էր ետքի ժամանակները ասոնք միացնել և միահամուռ ժողովուրդ կազմել, առանց դիպչելու ամեն մէկ խումբի ազգային աւանդութեանց։ Այս փորձը, որ թելադրութեամբ Անգղիոյ և Գաղղիոյ ի գործ դնելու աշխատած են Ռէշիտ, Ալի և Ֆուատ, չը պսակուելով, տէրութեան զօրութիւնն ալ հին դարերու մէջ ունեցած կացութիւնը վերանորոգելու անբաւական ըլլալուն, ամեն խումբի համար մինակ ընելիք մը մնացած է, այն է զատուիլ*) և ամեն մէկ խումբ իր ճարը տեսնէ. ահա հիմակուան կացութիւնը։ Դուք քաջ գիտէք, Վեհափառ Տէր, որչափ ես և ինձպէսները աշխատեցան իմացնելու այս տէրութեան, որ իր շահը Հայը առաջ բերելն է, Ասիան զօրացնելով. ասոր փոխարէն իրօք սա ցուցուցին, որ թէև միտում ալ ունենան, անկարող են էական բան մը ընելու»։

«Արդի շարժման մէջ ինչ ընել հարկ էր։ Երբ կը տեսնէինք պուլղարը, յոյնը, պօշնակը (բօսնիացին), նմանապէս արաբացին ազգայնութեան խնդիր մէջ կը բերեն, մենք, Հայք, ինչ պէտք էր որ ընէինք։ Տաճկաց հետ միանալ. անցեալը արդեն ապացուցած է, որ առանց հետ մնալու համար ուրիշ ճար չկայ, այլ մահմետական ըլլալ, այսինքն Ազգը ուրանալ։ Ահա հայ խնդիրը այսպէս երևան ելաւ. մենք երևան չհանեցինք, պարագաները հանեցին»։

«Մենք որ մեր նախնեաց աւանդութիւնները, որոնց մէջ կան կրօնքնիս, լեզունիս և յիշատակարաններնիս, երկրպագելի կը համարիմք, ճար մը փնտռեցինք յաղթողին դիմելով, յաղթողը քաջ ճանչնալով և յաղթողին ապագային մէջ ունենալիք դիրքը աղէկ գիտնալով։ Իրեն դիմեցինք խնդիրքներով, որպէս զի մեր ազգը օրինաւոր կացութիւն մը ունենայ։ Մենք, ինչպէս որ քաջ գիտէք, ոչ թրքանալ և ոչ ռուսանալ գիտենք. հայ եմք և մինչև ի վախճան հայ պիտի մնամք։ Հայութեան նպատակին ծառայելու դիտմամբ գործեցինք և պիտի գործեմք. թէև արդիւնք ալ ձեռք չբերենք, գոնէ մէկը չի կրնար մեզ ամբաստա-

*) Ընդգծումները մերն են։

նել, որ հայութեան պարտքը չկատարեցինք· թէև սխալինք, գոնէ պարտազանց չենք ըլլար»։

«Ձեր Սրբութիւնը կը կասկածի, որ մեր կողմէն ինքզինքնիս կամ միևնոյն բանն է՝ Ազգը կը ծախենք որու որ ըլլայ· բայց ասանկ չէ, ծախող չկայ, կարելի է առնել ուզող ըլլայ»։

«Կը սխալի՞նք արդեօք այս բռնած ընթացքնուս մէջ, բայց ինչպէ՞ս, երբ որ մեր նպատակը Ձեզի յայտնի է։ Աղէկ գիտցէք, որ այսօր Թուրքաց կառավարութիւն չկայ· միակ քրդերու հարստահարութիւն կայ Հայոց համար· միանգամայն ազգ կազմելու կամ անհետանալու խնդիրը կայ մէջտեղը։ Ասանկ պարագային մէջ քրէական յանցանք է ընդ մեզ թէ որ չգործենք»։

«Դուք որ մեր լոյսը ըլլալու կոչուած էք, Ձեր Աթոռը, որ մեր նախնեաց սրբազան աւանդութեան կեդրոնն է բոլոր ազգայնոց համար, նաեւ անոնց համար, որ Ձեր Աթոռոյն հակառակ կը համարիք, պարտազանց կըլլաք թէ որ մեզ աջակից չըլլաք։ Ի՞նչ կը վախէք, մենք մահկանացու ենք· պարտք կատարելու համար մինակ այս աշխարհ եկած ենք, պարտք կատարելով պէտք է կեանքերնիս կնքենք· ահա իմ կարծիքս, իմ սկզբունքս· չեմ կարծեր որ այս մասին մէկզմէկէ զատուինք»։

«Ուրեմն, Վեհափառ Տէր, աղէկ գիտցէք, որ ոչ միայն Ռուսաց, այլ Գերմանացւոց, Անգղիացւոց, Գաղղիացւոց և բոլոր Եւրոպիոյ դիմեցինք, Ազգին համար քաղաքական ապագայ մը ճարելու համար։ Ով որ մեզի հետ է, մեզի բարեկամ է։ Մենք բնաւ մէկու մը անձնատուր չենք եղած և չեմք ըլլար· պաշտպան կը փնտռենք մեր խեղճութեանը։ Թէ որ մէկուն շահը հայու շահուն հետ կրնայ միանալ, անոր հետ, թէ որ չէ, ուրիշի հետ։ Վերջապէս մեզի առաջնորդող սէրը ազգին շահն է։ Ձեզի համար ալ այդպէս է, տարակոյս չունիմ»։

«Ահա մեր ըրածը ու ընելիքը· կը մնայ Ձեր Վեհափառութեան իր բարձր հաւանութեամբը վաւերացնել։

«Մնամ Ձեր Բարձր Սրբազնութեան ամենախոնարհ ծառայ և որդի Սէրվիչէն»։

Իր գործնական արդիւնքով աւելի յաջող չէր Ռուսաստան եկող միւս հայ պատուիրակի՝ Նար-Բէյի վրայ դրուած յանձնարարութիւնը։ Իզմիրլեան և Նար-Բէյ միասին էին եկել Օդեսա, որտեղից առաջինը մեկնել էր Թիֆլիս և Էջմիածին, իսկ երկրորդն ուղղակի Պետերբուրգ։ Իզմիրլեան ի մէջ այլոց խօսել էր կաթողիկոսին և Մանկունուն՝ Նար-Բէյի ուղևորութեան նպատակի մասին՝ և խնդրել, որ նրանք աջակցեն ինչ-

պէս և որչափ հնարաւոր էր։ Ըստ այսմ Նար-Բէյ էլ ամբողջ երկու շաբաթ Պետերբուրգում նստած էջմիածնից հրահանգի էր սպասում։ Եւ երբ տեսաւ, թէ էջմիածինը չէզոք է մնում, իսկ Կ. Պոլսից էլ այդ միջոցին նոր հրահանգ էր եկել, որին կցուած էր մի կարևոր յիշատակագիր, նա այլ ևս չսպասեց և սկսեց իր վրայ դրուած յանձնարարութեան կատարման։ Նար-Բէյ հրահանգ ունէր ռուսական կառավարութեան հաւանութեանը ներկայացնել մի ծրագիր Հայաստանի վարչական ինքնօրինութեան մասին և միանգամայն պիտի խնդրէր, որ ռուսական զօրքը Հայաստանում իր գրաւած տեղերից չհեռանայ, մինչև որ Հայաստանի ինքնավարութիւնը չիրագործուի....։

Ահա այն ծրագիրն, որ Նար-Բէյ ներկայացրեց Պետերբուրգի վարչական բարձր շրջաններին։

Ա. Հայաստանը պիտի ունենայ ընդհանուր կառավարիչ, անպատճառ հայ-լուսաւորչական, որին պիտի ընտրէ սուլթանը ռուսական ցարի հաճութեամբ։ Կառավարիչը պիտի կոչուի մարզպան և վալի, պիտի ունենայ «միւշիրի» աստիճան։

Բ. Հայաստանի նահանգապետներն և գաւառապետները նոյնպէս լուսաւորչական պիտի լինեն, բայց սրանք պիտի ընտրուեն Հայաստանի Երեսփոխանական Ժողովից և վաւերացուեն Բ. Դռնից։

Գ. Երկրի կարգապահութիւնը հայոց ձեռք պիտի լինի. ոստիկանութիւնը հայերից պիտի կազմուի։

Դ. Դատարանները շէրիաթից ազատ պիտի լինեն և պիտի գտնուեն հայ դատաւորների նախագահութեան տակ։

Ե. Քիւրդ արտօնեալների (չօրբաջը, դէրէբէյի) արտօնութիւնների ջնջումը։

Զ. Տուրքերի նոր և արդար բաշխում։

Է. Վաքըֆի (մահմեդական հոգևորական կալուածք) բարեկարգութիւն. առհասարակ կալուածական օրէնքի վերաքննութիւն։

Ը. Թրքերի զինաթափումը Հայաստանում։

Թ. Հայաստանի համար վարչական նոր կանոնագրութիւն, որը պիտի վաւերացնէ սուլթանը՝ Ռուսաստանի հաւանութեամբ։ Եւ վերջապէս

Ժ. Զէյթունի հնգադարեան ինքնավարութեան երաշխաւորումը։

Այս ծրագրում երկու կէտ կայ առանձնապէս ուշադրութեան արժանի։ Նախ՝ այն մեծ վստահութիւնն է, որ Կ. Պոլսի Ժողովն (պատրիարքն և խորհրդակիցները) ըստ երևոյթին ու-

նի մի կողմից իր դատի արդարութեան և միւս կողմից քա-
ղաքական հանգամանքների նպաստաւորութեան մասին, այլա-
պէս այնքան խորին լաւատեսութեամբ տոգորուած դիմումներ
չէր անի և ըստ այնմ էլ ծրագիրներ չէր կազմի և չէր ներկա-
յացնի։ Երկրորդ՝ այն նոր քաղաքականութիւնը, թէ Հայաստա-
նի ինքնավարութիւնը Ռուսաստանի հաւանութեամբ և նրա
պաշտպանութեան տակ միայն կարելի է իրականացնել, ուստի
նրա հաճութիւնը գրաւելու համար էլ ծրագրում դրուած էին
համապատասխան կէտեր, ինչպէս «ցարի հաճութեամբ», «Ռու-
սաստանի հաւանութեամբ» և այլն։

Նար-Բէյի բախտից՝ նրա բարեկամ Իգնատիեւը արդէն
Պետերբուրգ էր վերադարձել, որով և կարողացաւ դիւրացնել
նրա մուտքը պետական բարձր շրջանները։ Մարտի 14-ին նա
ընդունվում է իշխան Գորչակովից, որին ներկայացնում է յի-
շատակագիր Հայաստանի ինքնավարութեան մասին և թախան-
ձանօք խնդրում է նրա աջակցութիւնը։ Ըստ Նար-Բէյի՝ Գոր-
չակով ասել է նրան, թէ վեհ. կայսրն և ինքը Գորչակով մե-
ծապէս ցանկանում էին, որ Հայկական խնդիրն ևս «լաւագոյն
լուծումն» ստանայ, բայց Անգլիան իր նենգուպատիր ընթաց-
քով խոչընդոտ էր հանդիսանում և Թիւրքիային ոյժ էր տալիս
ի վնաս իր հարստահարուած քրիստոնեայ հպատակներին, ո-
րոնց մէջ էին և հայերը։

Գորչակով փոխադարձ այցելութիւն է տալիս Նար-Բէյին
և յաջողեցնում է, որ յաղթական ինքնակալն ևս ընդունի նրան։

Մարտի 18-ին Ալէքսանդր Բ. կայսրը ունկնդրութիւն է
շնորհում նրան։ Ահա ինչպէս է նկարագրում ինքը Նար-Բէյ
այս ունկնդրութիւնը։

«Բազումք սպասէին ի դահլիճի անդ ընդունելութեան, այլ
մուծին զիս նախ քան զամենեսին առաջի մեծի ինքնակալին։
«Ճանաչեմ զձեզ,— ասաց,— և ուրախ եմ տեսանել զձեզ այսր վե-
րստին։ Տեսի զյիշատակագիր ձեր և եթէ հանգամանք քաղաքա-
կան ներեսցեն, կամիմ զի զոհ լինիցի ազգն Հայոց յապագային»։
Եհարց ապա թէ ի՞ւ կարծէք երաշխաւորել ձեզ զբարելաւու-
թիւնս 16-րդ յօդուածոյ դաշնագրի Սան-Ստէֆանոյի։ Պատաս-
խանի ետու թէ բազմիցս պատրեալ ի Տաճկաց, չկարեմք այլ
ևս յուսալ ի խաբուպատիր խոստմանս նոցա. Թող զի՝ և եթէ
կամիցին իսկ չկարացեն զսպել զՔիւրդս և զայլազգի վոհմակս
բարբարոսաց, բնակելոց ի Հայաստան։ Ապա ի վերայ բերի թէ
չիք մեզ այլօրինակ զերծանել ի հարստահարութեանց, բայց
եթէ պաշտպանութեամբ Ռուսիոյ և յերկարացմամբ զինուորա-

կան գրաւման, մինչև հաստատեսցի ի Հայաստան ինքնակալական իմն վարչութիւն պէս գունակ Լիբանանի»։ Այստեղ Նար-Բէյ ներկայացնում է կայսեր՝ Հայաստանի ինքնավարութեան ծրագիրը։ Նա այսպէս է շարունակում իր նկարագրութիւնը. «Ընկալաւ ինքնակալն զծրագիրն և յակն արկեալ մի անգամ, «բարւոք է,—ասէ,—զոսն գործեսցուք։ Աղօթս արարէք զի օգնեսցէ ինձ Աստուած»։ Յայտ է թէ ջան ի վար արկի տալ միշտ ըղպատշաճական պատասխանիս։ Յիշեցուցի նմա (որ և Նորչաքով իշխանի) չընդդիմանալն մեր ազգովիմբ, չառնուլ զէն ընդդէմ սրբոյ Թաչին, զոր նա ինքն ինքնակալն ունէր ի ձեռին ի դըրօշ ազատարար քրիստոնէութեան։ «Գովելի էր քաջութիւն այդ Ձեր» ասէ։ Յաւելի քաղաքավարութեամբ և զգուշաւոր բանիւք շնորհակալ լինիլ զի կամեցաւ ի հանդէս ածել յաչս աշխարհի զհաւատարմութիւն և զքաջութիւն հայ զօրավարաց։ «Նոքա զոհ արարին զիս» պատասխանեաց ինքնակալն ախորժ հաճութեամբ զիմաց։ «Մի ևս գլխաւոր խնդիր մեր ասեմ ի Վեհ. Տեառնէդ այս է, զի բարեհաճեսջիք դիւրացուցանել Առաքելական Աթոռոյ մերոյ տարածել զլուսարձակ և զփրկաւէտ ազդեցութիւն իւր ի վերայ տաճկաստանեայց Հայոցս»։ «Այլ,—ասէ,—ապաքէն դուք ինքնին ընդդէմ կայք այդմ, եւ այս ի մեծ վնաս Ձեզ»։ «Ներեսցէ ինձ Վեհափառութիւնդ տալ դիտել թէ ազգ մեր զՍ. Աթոռն իւր համարի կեդրոն կրօնական միութեան իւրոյ, և ցանկալով ցանկայ զի սրբազնագոյն գահակալն նորա ունիցի զնախնին իւր ընդարձակ և լիուլի հովուապետական տեսչութիւն ի վերայ մեր, զի այն է օգուտ մեր և շահ և փրկութիւն. այլ Բ. Դուռն ընդդիմանայ այդմ, և կոմսն Իկնադիէվ վկայ է ըղձից այսց մերոց, և բուռն է հակառակութիւն տաճկաց ոչ միայն յընթացս տասնևհինգամեայ պաշտօնավարութեան իւրոյ, այլ և նոյն իսկ յաւուրս վերջինս կնքելով դաշնագրին։ Աղէ Վեհափառութիւն Ձեր բարեհաճեսցի տալ ի գլուխ հանել և զայս մեր խնդիր, զոր կենսական համարիմք, ի բարգաւաճանս Եկեղեցւոյ մերոյ»։ «Այո, կենսական խնդիր է այդ,—յաւել ինքնակալն,—և զկարևորն հոգասցուք ի ժամանակին»։ «Ներեսցէ ինձ Վեհափառ Տէրդ,—ասացի,—զի սորջացայ աւետել համազգեացս զսիրալիր համակրանս և զխոստմունս զոր բախտ եղև ինձ լսել յՕգոստափառ շրթանց Ձերոց»։ «Ասացէք համազգեացդ զի ես սիրեմ զազգն Հայոց», պատասխանի ետ կայսրն։ Եւ մինչ խոնարհէաք միմեանց, յափշտակեցի զձեռն նորա և համբուրելով գոչեցի. «Օծեալդ Աստուծոյ, թոյլ տուր զի յանուն չորս միլիոն տառապեալ հայոց համբուրեցից զաջն

պայն, որ տայ փրկութիւն Հայաստանի»։ «Այո, ունիցիք դուք միշտ զիմ համակրութիւն, վստահ լերուք յիմ վերայ»։ Այս եղեն վերջին բանք ինքնակալին, և ես մեկնեցայ արտասուագին խնդութեամբ, խնդրելով ի Տեառնէ և բարեմաղթական բանս քինչ ասելով վասն կենաց Նորա և Օգոստափառ Ընտանեացն և Զաւակացն»*)։

Վեհանձն կայսեր այս սիրալիր ընդունելութիւնը Նար-Բէյ անմիջապէս հեռագրում է Կ. Պոլիս Ներսէս պատրիարքին։

Հետևեալ կիրակի օրը, ապրիլի 23-ին, հայ եկեղեցում պատարագի ժամանակ Նար-Բէյ իր քարոզումն էլ աւետեց կայսեր այս բարեհաճութիւնը հայերի նկատմամբ։

Սակայն ռուս պետական անձերի հետ Նար-Բէյի տեսակցութեան արդիւնքն այն եղաւ, որ նա համոզուեց, թէ իր ներկայացրած ինքնավարութեան ծրագիրը հաւանականութիւն չունէր յաջողելու...։ Ոչ միայն նրա իրականացումը Ռուսաստանի բարի կամքից և տրամադրութիւնից չէր կախուած, այլ մինչև իսկ ռուսական դիւանագէտները չէին խոստանում, թէ յառաջիկայ կօնգրէսում պիտի պաշտպանէին այդ ծրագիրը։ Եւ հայ եպիսկոպոս-պատուիրակը գրեց Կ. Պոլիս Վարժապետեանին, թէ, չնայելով իրան եղած սիրալիր ընդունելութեան, գործնականի մասին այնքան անորոշ պատասխաններ էր ստացել, որ ինքն իսկ գոհ չէր և թէ հետևաբար իր վրայ դրուած յանձնարարութիւնն ակնկալուած յաջողութիւնը չէր ունեցել։

Նար-Բէյի պատուիրակութեան այս անյաջողութիւնը վհատում պատճառեց Կ. Պոլսում, ուր առանց այն էլ նրա պատճառով ազգային վարչութիւնն և առանձնապէս պատրիարքը շատ նեղն էին դրուած Թիւրք կառավարութեան կողմից։ Սադրազամը բացարձակապէս իր խորին դժգոհութիւնն էր յայտնել Նար-Բէյի այս առաքելութեան նկատմամբ և պահանջել էր, որ անմիջապէս վերադառնայ նա այնտեղից։ Կառավարութեան այս զայրոյթն ի նկատի ունենալով, բարեկամներ գրել էին Նար-Բէյին, որ նա մի առ ժամանակ չվերադառնայ Կ. Պոլիս, մինչև որ հանգամանքները փոխուեն։ Ներսէս պատրիարք էլ համապատասխան հրահանգ ուղարկեց նրան, և Նար-Բէյ ըստ այնմ Պետերբուրգից մեկնելով անցաւ Եւրոպա և միացաւ այնտեղ Խրիմեանին։

Այժմ տեսնենք, թէ ի՞նչ վերաբերմունք ցոյց տուին ռու-

---

*) Նար-Բէյի զեկուցումը Գէորգ կաթողիկոսին Պետերբուրգից, 21 մարտի 1878 թ.։

սահայերն և բուն ռուս ժողովուրդը Թրքահայոց դատին՝ Սան-Ստեֆանոյի դաշնագրի առթիւ։

Հայկական Խնդրում Գէորգ կաթողիկոսի ի սկզբանէ ի վեր՝ գլխաւորաբար Մանկունու ազդեցութեան տակ՝ ցոյց տուած անտարբերութիւնը միայն Թրքահայերին չէ, որ վիշտ էր պատճառում։ Ռուսահայերի մեծ մասը նոյնպէս եռանդով իր աչքերն ուղղած էր այն կողմը, նոյն ոգևորութեամբ հետևում էր պօլսական խմբի կատարած ջանքերին և նոյնպիսի խղճեր էր սնուցանում Թրքական Հայաստանի ժողովրդի վիճակի բարւոքման մասին, ինչպիսին ունէին պօլսեցիք։ Ուստի ռուսահայերն ևս պահանջում էին, որ Գէորգ Դ. ազդուապէս աջակցի այս ուղղութեամբ կատարուած ջանքերին, նոյն իսկ ինքնաբերաբար հարկ եղած քայլերն առնելով*)։

Ռուսահայ լրագիրներն ևս մի բանում համերաշխ էին, այն է՝ որ անհրաժեշտ էր ինքնավարութիւն պահանջել Հայաստանի համար։ «Մշակում» Գրիգոր Արծրունին երկարօրէն զբաղվում էր Թրքահայերի վիճակով և գտնում էր, թէ կամ Հայաստանին տեղական լիակատար ինքնավարութիւն պէտք էր տալ, և կամ, եթէ այս անկարելի էր, այն ժամանակ լաւագոյն էր, որ երկիրն ուղղակի միացուէր Ռուսաստանին։

---

*) Այն միջոցին, 1878 փետր. 15 թուով Բաքուից մի հետաքրքրական նամակ է ուղղուած Գէորգ կաթողիկոսին, «Հայազգի» ստորագրութեամբ, որից աւելորդ չենք համարում մի քանի հատուածներ յառաջ բերել.

«Բազմադարեան և բազմակնճիռն Արևելեան Հարցը լուծուելու վրայ է. գրեթէ բոլոր ազգերն անպատմելի հոգածութեամբ և զգուշաւոր ու հեռատես պատրաստականութեամբ հետազօտում են այդ լուծման եղանակը, ընթացքը և նրա հետևանքը։ Թէ մեծամեծ և թէ փոքրիկ ազգութիւններն աշխատում են որքան հնար է շատ օգուտներ քաղել այս դէպքից, որովհետև այդպիսի դէպքերը հազուագիւտ են և անգին են ազգերի գոյութեան համար նոցա կեանքի պատմութեան մէջ...։ Ամենայն տեղերի հայեր մեծ յոյս ունէին, որ պատերազմից յետոյ Հայաստանն ևս իւր հաւատարմութեան և կրած անթիւ չարչարանքների փոխարէն մի բան կը ստանայ իւր կենտրոնում իւր որդոց պատսպարութեան համար։ Իւրաքանչիւր օր մի հեռագիր և լրագիր խաղաղութեան պայմանների մասին զանազան լուրեր բերելով, մեծ զարմանքով և սրտի ցաւով տեսնում ենք, որ ոչ մի տեղ հայի և Հայաստանի անունը չկայ...։ Ձեր օրով աշխարհի մէջ մեծ պատմական իրողութիւն է կատարվում...։ Արդեօք մի հոգացողութիւն, մի նախագիծ ունի՞ք պատրաստած, մի ոևիցէ գործնական քայլ արած կամ անելո՞ւ էք այս մասին։ Ռուսաց կայսեր եւ միւս եւրոպական տէրութիւնների առջեւ միջնորդելու և քաջութեամբ պաշտպանելո՞ւ էք Հայկական Խնդիրը...։ Բայց առ հասարակ ամենքը կարծում են, որ դուք անհոգ նստած էք և միայն ձեր անձնական հանգստութեան վրայ էք մտածում...։ Անցեալ ամառ (1877) Բագուի հասարակութիւնը մի բազմաստորագիր աղերսով դիմեց Ձեր Վեհափառութեանը

Թիւրք կառավարութեան սովորական տիրապետութեան տակ Հայաստանի վիճակի ոչ մի բարեփոխում հաւանական չէր գտնում նա։ «Մեղու» կողմնակից էր առաջին միջոցին, այսինքն ինքնավարութեան, բայց ոչ երկրորդին։ Երբ յայտնի եղաւ, որ Սան-Ստէֆանոյի դաշնագրում ոչ մին է որոշուած և ոչ միւսը, «Մշակ», ընդհանրապէս դժգոհ 16-րդ յօդուածից, խորհուրդ էր տալիս, որ գոնէ այսուհետև Կ. Պոլսի ազգային վարչութիւնն իր գլխաւոր ուշադրութիւնը կենտրոնացնէր Հայաստանի վրայ, և առաջարկում էր, որ Ազգային Երեսփոխանական Ժողովը տեղափոխուի Վան կամ Էրզրում։ Արծրունին մտածում էր, թէ եթէ վարչական-տնտեսական ինքնավարութիւն չէր մուծվում այնտեղ, այս միջոցով գէթ Ազգային Սահմանադրութեան ծրագրած սկզբունքներն աւելի շուտով մատչելի կը դառնային մայր երկրի ժողովրդին։ Որչափ և բաղձալի լինէր այսպիսի մի ծրագրի իրագործումը, բայց տարակոյս չկար, որ նրա իրականացումը դժուարին էր և մեծ խոչընդոտների պիտի հանդիպէր։

Բուն ռուս լրագիրներն ևս 1877—1878-ին յաճախ զբաղվում էին Հայկական Հարցով և շատերը նոյնպէս կողմնակից էին Հայաստանին ինքնավարութիւն տրուելուն։ Եղան այնպիսիներն, որոնք նոյն իսկ անկախութիւն էին պահանջում Հայաստանի համար։ «Московскія Вѣдомости» հանրածանօթ պահպանողական լրագիրն առաջինն եղաւ, որ 1876-ից սկսեց զբաղուել Արևելեան Խնդրով և նպաստաւոր յօդուածներ էր գրում հայերի մասին, թէև նա մինչև այն ժամանակ առանձին համակրանք չէր տածում նրանց նկատմամբ։ Անշուշտ արտաքին հանգամանքներից դրդուած, նա՝ հայերի համար էլ նոյն իրա-

---

և աղաչեց, որ հոգաք ռուսահայոց խորհրդով մի պատգամաւորութիւն կազմակերպել և վաղօրօք ուղարկել ուր հարկն էր։ Այս աղերսին Դուք ինչ նշանակութիւն տուիք։ Դուք պատասխան՝ անգամ չտուիք հասարակութեան, որը երկար խորհելուց յետոյ էր որոշում արել Ձեզ դիմելու...։ Այս տասնամսեայ պատերազմի ժամանակ Ռուսաստանի մեր հոգևորականութիւնը բոլորովին անտարբեր մնաց, ոչինչ չգործեց, երբէք գործնական կերպով չաշխատեց մեր Թշուառ եղբայրների ապագայի համար։ Կարծում ենք, որ նոքա ամենքը Ձեզ էին նայում, Ձեր քաղաքականութեանն էին հետևում որ լուռ և անտարբեր նստեցին մինչև այժմ. եթէ ոչ հոգևորականութիւնը կարող էր մեծ գործ գործել, եթէ հետևէր իւր աշխարհական եղբայրների քաղաքականութեանը։ ...Տէրութեան (Ռուսաստանի) քաղաքականութիւնը ոչ միայն չէր արգելի, այլ և ամենայն ուրախութեամբ կօժանդակէր մեզ գործ տեսնելու...»։

(Կաթող. Դիւան).

ւունքներն էր պահանջում, ինչ որ պիտի տրուէին բալկանեան քրիստոնեաներին։ Մի՞թէ,—ասում էր ռուս լրագիրը,—հայերը պիտի չստանան քաղաքական իրաւունքներ, լոկ այն պատճառով, որովհետև նրանք տանջուել են, չարչարուել են, բայց համբերել են և չեն ապստամբուել։ Նրանից վերջ ուրիշ ռուս լրագիրներ ևս սկսեցին հետաքրքրուել Հայկական Խնդրով և շարունակ հրատարակում էին լուրեր, տեղեկութիւններ և յատուկ ընդարձակ յօդուածներ թէ ինքնուրոյն և թէ Կովկասի և Եւրոպայի լրագիրներից քաղուած։ Ռուսական լրագիրներից շատերն այժմ հերքում էին այն «սխալ և ծուռ գաղափարներն», որոնք մինչև հիմայ կազմուել են «այս աշխատասէր և ընդունակ ազգի» վրայ։ Ռուս օրթոդոքս եկեղեցու բերան թերթերն ևս նըպաստաւոր էին Հայկական Դատին։ «Православное Обозрѣніе» կրօնական ամսագրի մարտի (1878) համարում՝ Թէօփան եպիսկոպոսն, որ 10 տարուց աւելի բնակուել էր Արևելքում, առաջարկում էր... «Փոքր Ասիայում վերականգնել հայկական թագաւորութիւնը»։ Այս մտքով էր խօսում այժմ նաև Պետերբուրգի կիսապաշտօնական «С.-Петербургскія Вѣдомости» պահպանողական թերթն, որ դրանից քիչ ժամանակ յառաջ հայերի դէմ էր գրել և այս պատճառով վիճաբանութիւն էր ունեցել Պետերբուրգի յայտնի «Голосъ» յառաջդիմական լրագրի հետ, որ միշտ համակիր էր հայոց և պաշտպանում էր հայ ժողովուրդն ուրիշների անիրաւ յարձակումներից։ Այս նպաստաւոր տրամադրութեան ներքին շարժառիթը պարզուած ենք տեսնում Բրիւսէլի «Le Nerd» լրագրում, որ ռուսական հայեացքի արտայայտիչն էր համարվում արտասահմանում։ «Le Nord» առաջարկում էր Փոքր Ասիայում կազմակերպել հայկական իշխանութիւն, «որն, անկախ թէ հարկատու, փոքր և թոյլ լինելով միշտ Ռուսաստանի ազդեցութեան տակ պիտի գտնուի և նրանից պիտի ստանայ իր բարոյական ու մտաւոր, ինչպէս և նիւթական ու քաղաքական կենդանութիւնն և միևնոյն ժամանակ մի նախադուռ պիտի կազմէ թիւրքերի դէմ»։ Եւ ճիշտ այս հիման վրայ էլ Անգլիան պիտի հակառակէր այսպիսի ինքնօրէն Հայաստանի կազմակերպման...։

ՍԱՐՈՒԽԱՆ

(Կը շարունակուի)

---

# ԳԱԲՐԻԷԼ ՔԱՀԱՆԱՅ ՊԱՏԿԱՆԵԱՆԻ ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆԸ*)

## (1822—1880)

---

## Զ.

### Ներսէս վ. Աշտարակցու՝յ փախուստը Տփխիսէն

Դանիէլ Պօլսէն յուղի անկաւ գալ Էջմիածին, այլ Դաւիթ աճապարեց, օգնութեամբ Գալուստ եպիսկոպոսի ստացաւ Օսմանեան տէրութենէն հրովարտակ. և դեռ Դանիէլ հասած չէր Իւչ-Քիլիսէ, որ Դաւիթ հասաւ Էջմիածին և Երևանայ սարդար Մահմէդ խանի ուժով՝ բռնութեամբ օծուեցաւ կաթողիկոս։

Գրիգոր վարդապետն՝ որ հանդերձ կաթողիկոսական աղխիւն Յոսէփայ գալիս էր, երբ հասաւ Վլադիկաւկաս՝ լսեց Յոսէփ սրբազանի վախճանն, կարաւանը յետ դարձոյց Մոզդոկ, ուր ունէր բազում համախոհ, բոլոր հայրապետական ճոխութիւնն ապահով տեղեր զետեղեց, և ինքն որքան ոսկի հարկաւոր համարեցաւ՝ առաւ հետն և ճեպեց Էջմիածին, և տեսաւ, որ Դաւիթ տարակուսանաց մէջ է, միաբանք չեն ընդունում, նա ուզում է պարսից օգնութեամբ բռնանալ, այլ պարսիկք ոսկին յառաջագոյն են պահանջում, որ ոչ Դաւիթ ունի և ոչ նրա եղբարք կամ կուսակիցք։ Գրիգոր որպէս երկնաւոր օգնական հասաւ, ստացաւ Դաւթէն խոստումն, որ ձեռնադրէ և արքեպիսկոպոս անուամբ Աստրախանայ առաջնորդ կարգէ. Երևանայ խանին տուեց կաշառքը, բերեց պարսից զօրքն, միաբանից հաւաքեց, բռնի եկեղեցի եմոյծ և Դաւթին օծել տուեց։ Դաւիթ կաթողիկոսն ևս Գրիգորին ձեռնադրեց և կոնդակ տուեց Ռուսաստանի առաջնորդութեան։

---

*) «Արօր» №№ 4, 5—6.

Բայց ինչպէս Գրիգորի գործն յաջողակ էր յայնկոյս Կովկասի, Եփրեմի գործն յաջողակ գնաց յայսկոյս Կովկասի։

Եփրեմ իւր հինգամեայ գերութեան ժամանակն վաստակել էր Աստրախանայ մէջ բազում բարեկամք։ Այս բարեկամք օգնեցին Եփրեմին, որ աղա Յոհաննէս Լազարեանին հանճոյանայ։ Աղա Յոհաննէսն օգնեց Եփրեմին՝ ռուսաց մեծամեծաց ծանօթանալ, և նոքա Ալէքսանդր Ա. կայսրարքայէն հրովարտակ հանեցին, որ Գրիգոր արքեպիսկոպոսն չմտնի Ռուսաստան, և նա երբ հասաւ Վլադիկաւկաս, որ այն ժամանակն Ռուսաստանի սահմանագլուխն էր, այնտեղ մնաց որպէս ի գառապղի։

Այսպէս՝ Ռուսաստանի առաջնորդութեան վերայ մինչ երկու արքեպիսկոպոսունք՝ Եփրեմ և Գրիգոր վիճաբանում էին, հայրապետական գաւազանի համար ոգորում էին երկու կաթողիկոսք, Դաւիթ և Դանիէլ, որ Իւչ-Քիլիսէ կոչեալ վանքումն՝ աշտարակցի Ներսէս վարդապետ Շահազիզեանցի և կիւմիւշխանցի Մանուէլ վարդապետի յօժարութեամբ պօլսեցի իշխանաց և պատրիարքի Գրիգորի Կեսարացւոյ՝ ձեռնադրեցաւ Աղթամարայ կաթողիկոսէն և էջմիածնի սինոդի հիմն դրեց։ Սինոդն Դաւթի բռնութեանց դէմ մի հզօր սանձ էր, որոյ ծայրերըն կային Ներսէս վարդապետի, Մանուէլ վարդապետի և Եփրեմ արքեպիսկոպոսի ձեռին, որով Դաւիթ և իւր համախոհք զսպվում էին էջմիածնի մէջ, և Գրիգոր և իւր կուսակիցք՝ Ռուսաստանի մէջ։ Այս այն ժամանակն էր՝ մինչ Սերոբէ Պատկանեանն իւր առաջին երգերն սկսաւ նուագել, «Սարսեցուցին զօրաց երկնից», և այլն։ Այս երգոյ գլխատառքն կը բաղյօդէին՝ «Սերոբէ Տէր-Պետրոսեան պօլսեցիս երգեցի»։ Տակաւին այն միջոցն Պատկանեան ազգանունն չէր գործածում։ Եւ այս ժամանակ, այսինքն 1802 թուին, ծնաւ Սերոբէ Պատկանեանի երկրորդ որդին Գաբրիէլ, որոյ անունն հայրն Սերոբէն իւր պապու՝ տէր-Գաբրիէլ աւագ քահանայի անուամբ կնքեց, իսկ մայրըն Մարիամ Միքայէլեանց իւր հօրեղբօր՝ Գաբրիէլ մայիորի անուամբ։

Ութ ամսական էր նորածին տղայն Գաբրիէլ, որ էջմիածնէն եկաւ Դաւթի բռնութենէն և պարսից հրոսակաց դաժանակալութենէն փախստական և հալածական Ներսէս վարդապետն աշտարակցի Շահազիզեանց կամսարականն. և որովհետև անհնար էր նորան ծածուկ մնալ Դաւթի լրտեսների զննութենէն առաջնորդարանի մէջ, առաջնորդն՝ գեղարդակիր Յոհաննէս արքեպիսկոպոսն խնդրեց Սերոբէ Պատկանեանին, որ իւր տան մէջ հիւրընկալէ և ծածուկ պահէ, որպէս և նա պահպա-

նեց ութ ամիս, որով նորածին Գաբրիէլ մատաղաւուրց տղայն Ներսիսի գրկաց մէջ զարգացաւ, մինչև որ ռուսաց վարչութիւնըն Դաւթի պահանջմամբ սկսաւ Ներսիսին որոնել, և երբ իմացաւ, թէ Սերոբէ Պատկանեանի տանն է, զօրօք տունն շրջապատեց, այլ քաջութեամբ վերոյիշեալ Աբուզաւրեան տէր-Մոսիսի՝ լուսամուտ պատուհանէն, որ Նարեկացին «լուսանցոյց երդ յարկին» է կոչում, գոտիով վեր քարշուելով կորզեցաւ յանուն կայսերական հրովարտակին, և անտի ուղղակի դիմեց Ռուսաստան առ Եփրեմ 1802 նոյեմբերին։

## է.

## Հիմնումն Աղաբաբեան վարժարանի յԱստրախան

Յոսէփայ Աստրախանէն ելանելոյ ժամանակն՝ հկն աղա Յոհաննէս Լազարեանն հրաժարական ողջոյն տալոյ աղազաւ, և անդ աղա Մկրտում Գալստեանի եղբօր՝ աղա Գալուստի տանն հացկերոյթի ժամանակն Յոսէփ սրբազանն ու աղա Յոհաննէսն խօսել էին հրապարակաւ Լազարեանց ճեմարանի հաստատութեան համար Աստրախան քաղաքումն, ուր պիտի հրաւիրէին Սերոբէ Պատկանեանին։ Այս էր պատճառն, որ Յոսէփ երբ Տփխիս մտաւ, Սերոբէին պատուէր տուեց, որ իւր աչքէն չհեռանայ, որ և նա այլ բաներով զբաղեալ Աստրախանայ վարժատունն չմոռանայ։ Այլ վերին ակնարկութիւնն այնպէս տնօրինեց, որ միևնոյն տարին՝ 1800 թուին Յոսէփ վախճանեցաւ Տփխիս, աղա Յոհաննէսն Լազարեան ի Ս. Պետերբուրգ. Նոր-Նախիջևանայ Սուրբ-Խաչ վանքի կաթողիկէի գմբէթն փլաւ, ու ռուսաց կայսրն Պօղոս Ա. ել ի կենաց։

Նոյն տարին Աստրախան քաղաքումն Եփրեմ արհին հրաւիրած էր աղա Մաթոս Իւլաֆեանի որդւոյ՝ Յոհաննէս աղայի տանն ի հացկերոյթ. առարկութիւն եղև անցեալ աւուրց վերայ, և Յոսէփ Թումանեան Ամիրխանեանն ասաց. «Մենք յոյս ունէինք, որ այս տարի տեսնէինք Լազարեան վարժատունն հիմնած Աստրախանայ մէջ, այլ ո՛չ նորա շինողն կայ, և ոչ նորա հիմնադիրն. ո՛չ աղա Յոհաննէս Լազարեանն և ո՛չ Յոսէփ սրբազանն»։

Աղաբաբեան Նիկողայոս աղայն Յոհաննիսեան, որ մի յոխորտ անձն էր և Լազարեանց տան հետ աւելի մտերիմ չէր, ասաց. «Եթէ երկոքին ևս կենդանի լինէին, թէ Յոսէփ սրբա-

գանն և թէ Յովհաննէս աղա Լազարեանն, այլ վարժատունն Աստրախան չէր շինուիր, որպէս ինձ քաջայայտ է։ Յոսէփի փոխարէն Աստուած մեզ Եփրեմ է տուել. միթէ մեր մէջ մի Յովհաննէս աղա ևս չի՞ գտնուիր, որ մի վարժատուն կանգնէ»։ Եփրեմ, որ այս խօսքին էր սպասում, ոտքի վրայ կանգնեցաւ և ասաց. «Աղա Նիկողայոս, մեր աղա Յովհաննէսը այսօր դու ես. ուստի որ եկել էր Նազար աղայն, դու ևս այնտեղէն ես եկել. ինչ որ նա էր լսել Հնդկաստանի հայ ազգասիրաց բերնէն և աւանդել էր իւր զաւակաց, այն դու ինքն ես լսել. կանգնիր մի վարժատուն, և ես Սերոբէ Պատկանեանին պատրաստ եմ բերել Աստրախան»։ Միաբերան աղաղակեցին ամենեքեան. «Լաւ է հրամայում սրբազան՝ հայրն, աղա Նիկողայոս (Նիկոլայ Իվանովիչ), մենք ևս խնդրում ենք, որ դու այդ բանին գլուխ դառնաս»։ Աղա Նիկողայոս գնաց ու Եփրեմի աջն համբուրեց։ Եփրեմ պահպանիչ ասաց, և այս խորհուրդն սկսաւ։

Երբ Ներսէս եկաւ Ռուսաստան, Եփրեմ Աստրախան չէր, այլ գնացել էր վիճակին այցելութիւն, որովհետև Գրիգոր արքեպիսկոպոսն հրաման էր ստացել Ռուսաստանէն հեռանալ, այլ նա հնար էր որոնում ոտքն դնել մայրաքաղաքաց մէջ։ Ներսէս այդ պատճառաւ դեգերում էր, որ Գրիգոր արքեպիսկոպոս ո՛չ երթայ Աստրախան, ոչ երթայ մայրաքաղաք, ոչ վերադառնայ Տփխիս, ոչ Էջմիածին, և այնքան աշխատեցաւ՝ մինչև Գրիգոր գնաց Օդեսսի կողմն, ինքն Ներսէս գնաց Եփրեմին հանդիպեցաւ Ղզլար 1803 թուին, և այնքան ժամանակ Վլադիկաւկասի, Մոզդոկի և նոցա շրջակայքն որոնեց և գննեց, թէ Գրիգոր ո՞ւր կարող էր Յոսէփայ յափշտակած ճոխութիւնն պարտակել։ Շատ սանամայրներ էին հարստացել, բայց Ներսէսի ձեռքումն հաւաստիք չկային, որ պահանջէր։ Գրիգոր սրբազանի եղբայրն՝ Անդրէաս աղայն Զաքարեան Քիշնով կիւղաքաղաքի մէջ տուն էր շինել. Գրիգոր սրբազան այնտեղ գնաց և հանգիստ գտաւ։ Այս նորա աքսորանաց տեղն էր։ Բայց լոյսն ի խաւարի լուսաւորէ. աքսորական տեղին փոխուեցաւ նորա համար փառաց և պարծանաց ասպարէզ։

Երբ որ Գրիգոր գնաց Բեսարաբիայի կողմն՝ Ներսէս ուղարկեց Մանուէլին Գրիգորիպօլիս յաջորդական իշխանութեամբ, որ Գրիգոր չկարողանայ Գրիգորիպօլիս քաղաք մտնել, ինչպէս ցանկանում էր Օդեսսի շինող կաղդիացի արքայազն՝ դիւք դը Ռիշըլեօ։

Եփրեմ պատմեց Ներսէսին աստրախանցւոց խնդիրն և Աղաբաբեան Նիկողայոս աղայի ուխտն և իւր խոստումն և

յանձնեց Ներսէսին նամակ, որ երբ վերադառնայ Տփխիս, նամակն տայ Սերոբէ Պատկանեանին ու նորան յորդորէ, որ նա թողու Տփխիս և գայ Ռուսաստան։

1804 թուին Ներսէս եկաւ Տփխիս և սկսաւ յորդորել Սերոբէ Պատկանեանին երթալ Եփրեմի վիճակն ու Աստրախան քաղաքի մէջ հիմնել իւր բնակութիւնն, ուր Աղաբաբեան Նիկողայոս աղայն մտադիր է կանգնել ազգային վարժարան։ Սերոբէ վարժապետն Պատկանեան ձանձրացել էր դաւթեան և դանիէլեան կռիւներէն, մանաւանդ Ջաւաթ խանի ղարանակալութենէն, որ ամեն հնար գործ էր դնում Սերոբէ Պատկանեանին ձերբակալ առնել... և այնքան ժամանակ չունէր նորանէ անդորր, մինչև 1804 յունվարի 10 Ցիցիանով կոմսն առաւ Գանձակ քաղաքն, և այն շփոթի մէջ մեռաւ Ջաւաթ խանն։ Բայց Սերոբէի հալածանքն սկսել էր Հերակլ արքայի որդւոյ և ժառանգի՝ Գիորգի թագաւորի ժամանակն, որ միշտ հարկադրում էր նորան ընդդէմ հայոց եկեղեցւոյն գրել և խօսել։ Յետոյ սկսաւ հալածանք կրել ռուսաց կողմնապետերէն, որ զկնի մահուանն ճեներալ Լազարեվի մինչև ի Ցիցիանով կողմնապետեցին։ Ցիցիանով ևս իւր առաջին աւուրքն ծանր հարկ պահանջելով զզուեցոյց, վասնորոյ 1804 թուին յօժարեցաւ թողուլ իւր կինն երեք որդւովք, և գնալ Ռուսաստան, այլ որովհետև ռուսաց լեզու չգիտէր, նորան ուղեկից տրուեցաւ Աւագ Վահրամեանի եղբայր Գրիգոր Վահրամեան, որ կնքահայր էր Սերոբէ Պատկանեանի երրորդ որդւոյ՝ Պետրոսի մկրտութեան ժամանակն։ Այսպէս Սերոբէ Պատկանեանն եկաւ և գտաւ Եփրեմին Ղզլար քաղաքումն։

Նոյն միջոցին եկաւ Երևանէն Սիմէոն կաթողիկոսի եղբօրորդին Գէորգ Մելքիսէթեան Խուբեանց, որ ցանկութիւն ունէր Եփրեմի մօտ գրագիր լինել, բայց որովհետև Եփրեմ ճանաչում էր նորա անտանելի բարքն, նորան չընդունեց, այլ ի պատիւ յիշատակի Սիմէոն կաթողիկոսի՝ Գէորգ Խուբեանին տուեց Ղզլարայ վարժապետութիւնն, ինքն առաւ Սերոբէ Պատկանեանին և եկաւ Նոր-Նախիջևան 1806 թուին։ Նոր-Նախիջևանցիք բռնութեամբ յափշտակեցին Եփրեմի ձեռքէն Սերոբէ Պատկանեանին և արարին իւրեանց քաղաքի վարժապետ, ուր և տնօրէնութեամբ Ներսէսի՝ Եփրեմի ուղիի հետ եկին Սերոբէի կինն, երեք որդիքն և զոքանչն Թամար, որ և մեռաւ անդ։

Այսքան ժամանակի մէջ Դանիէլ զկնի եօթնամեայ անտանելի չարչարանաց վերջապէս քաջութեամբ Ներսէսի յաջողեց բազմել ի հայրապետական աթոռ, ուստի մերժեցաւ Դա-

ւիթ և կտակաւ աւանդեց, որ զկնի իւր նստի ի Գահ Լուսաւորչեան Եփրեմ, ուստի երբ Դանիէլ կաթողիկոսն զկնի ձեռնադրութեան Ներսիսի յեպիսկոպոսութիւն՝ վախճանեցաւ, կայսրալըքայական հրովարտակաւ համաձայն հաճութեան ազգին ընտրեցաւ կաթողիկոս՝ Եփրեմ սրբազանն. և որովհետև արդէն պատրաստ էր Աղաբաբեան վարժարանն, Սերովբէ Պատկանեանին տարաւ յԱստրախան և կարգեց այն նոր վարժարանի մէջ վարժապետ 1810 թուին, մինչ նորա որդին Գաբրիէլն էր ութամեայ։

Ը.

## *Եփրեմի հրաժեշտը Սերովբէ Պատկանեանին*

Եփրեմ գնաց Աստրախանէն Տփխիս, Տփխիսէն՝ Էջմիածին և օծաւ հայրապետ 1810 թուին։ Նորա վիճակն կառավարում էր Ստեփան վարդապետն, որ Եփրեմի միջնորդութեամբ ստացաւ ասպետական նշան և Էջմիածնի մէջ մի անուն ստացաւ՝ «Կաւալէր Ստեփան վարդապետ կամ եպիսկոպոս»։

1811 թուին եկաւ Ռուսաստանի առաջնորդ Յոհաննէս արքեպիսկոպոս Յակոբեանց (մականուանեալ Գայլակերեան կամ Գառնակերեան)։ Եփրեմ, որ որքան հնար ունէր՝ այնքան շահել էր Սերովբէ Պատկանեանի սիրտն և փառաւորել էր, Աստրախանէն երթալոյ ժամանակն Պետրոս Պօղոսի եկեղեցւոյ մէջ պատարագ մատոյց. պատարագի ժամանակն օրհնութիւն խօսեցաւ Աստրախանայ ժողովրդեան, որ տեսել էին նորա նեղութեան օրերն ինչ որ կրել էր թէ Յոսէփէն, թէ Գրիգորէն և թէ նոցա համախոհներէն, բնաբան դնելով այս Դաւթի մարգարէի խօսքն՝ «Ուրախ եղաք փոխանակ աւուրց՝ յորս խոնարհ արարեր զմեզ, և ամաց՝ յորս տեսաք զչարչարանս» և այնտեղ յիշելով Սերովբէ Պատկանեանի ջերմեռանդ և մտերիմ ծառայութիւնքն՝ արտասուօք համբուրեց նորա աչքերն և ասաց. «Քեզ տալով հրաժարական ողջոյն՝ կարծում եմ, որ բոլոր Աստրախանայ ժողովրդեան՝ ծերոց և տղայոց՝ եմ տալիս այս համբոյրն. դու պիտի լինիս իմ պատկեր». հանեց մատնէն մատանին և ագուցանելով նորա մատն՝ ասաց. «Քեզ այս մատանին՝ որ տալիս եմ, այն է՝ դիտաւորութիւնս, որ դու լինիս դաստիարակ առաջնորդին, որն որ ես կուղարկեմ»։

Վասնորոյ երբ եկաւ նոր առաջնորդ Յոհաննէս արքեպիս-

կոպոսն Յակոբեան, բերեց Եփրեմի հայրապետական կոնդակն և իւր ներկայութեամբ տուեց ընթեռնուլ յունկն ժողովրդեան, որով հրամայել էր սրբազան կաթողիկոսն, որ մինչև դպիրք չունենան գիտութիւն, չձեռնադրուին սարկաւագ, և սարկաւագունք չձեռնադրուին քահանայ. և եթէ առաջնորդն կատարէ անարժան ձեռնադրութիւն, Սերոբէ Պատկանեանն արգելումն տայ։

Թ.

## Տէր-Սարգիս աւ.-քահ. Բերիժանեանի ճգտումը

Այն ժամանակն երևելի էր հոգևորականաց մէջ տէր-Սարգիս Բերիժանեան աւագ եկեղեցւոյ աւագ քահանայն, և աշխարհականաց մէջ Սարգիս Բենդերցեան, որ աւագ եկեղեցւոյ երեսփոխն էր։ Թէպէտ սոքա ուսումն չէին ստացել, բայց չէր կարելի ասել, թէ տգէտ անձինք էին։ Տէր-Սարգիսն քաջավարժ էր եկեղեցական արարողութեանց մէջ, քաղաքավարութեամբ զարդարեալ. խօսակցութեան մէջ համեստ և չափաւոր, այլ չափազանց փառասէր և նախանձոտ, որ մեծաւ զգուշութեամբ ծածկում էր իւր ամենայն պակասութիւնքն։ Իւր հօրէն մնացած ծուխն հարուստ և առաջաւոր մարդիկ լինելով, կարողացել էր նոցա և բոլոր քաղաքին հաճոյանալ. սա իւր խոհականութեամբ ստացել էր առաջնորդի վրայ մեծ ազդեցութիւն։ Իսկ երեսփոխան Սարգիս աղայն Բենդերցեան էր խսպառ անգրագէտ, բայց լուսաւոր մտաց տէր լինելով անձնակրթութեամբ իւր կենաց ասպարէսն սկսել էր սալլահութեամբ և հասել էր մոմջիութեան, վասնորոյ և ասվում էր «Մոմջի Սարգիս»։ Սորա ճրագավաճառութիւնն արգելք չէր, որ սա ստանայ աստուածապարգև ճոխութիւն. առի և տրոց մէջ արթուն և տրդարակորով, հասարակութեան մէջ միշտ կողմնապահ ճըշմարտութեան, ստացել էր պանծալի անուն հանճարեղութեան. և իրաւի հանճարեղ էր. ինչ հարկաւոր գիր լինէր, նա կարող էր թելադրել այնքան ուղիղ, որ խսպառ անկարօտ կը լինէր սրբագրութեան կամ փոփոխութեան։ Սոքա երկոքին այնքան հաճոյացան առաջնորդին, որ նորա կամաց սանձն իւրեանց ձեռքն առին։ Աստրախանցիք ևս այն ժողովրդենէն էին, որ կը կամենային իւրաքանչիւր ոք մի երևելի գործ գործած լինին. և որովհետև այն ժամանակ չունէին այլ ասպարէս, նոցա

գործունէութեան ասպարէս էր եկեղեցին. ոմանք արծաթապատ պատկեր կընծայէին, ոմանք արծաթապատ աւետարան, ոմանք ոսկեզօծ սկիհ, և ոմանք ևս մի քահանայ ձեռնադրել կուտային. եթէ այս ձեռնադրելի հոգևորականի համար Սերոբէ Պատկանեանն ասէր՝ թէ տգէտ է, ոչ թէ միայն խկոյն այս պատասխանն կը լսէր, թէ միթէ քան զԲերիժանեան տէր-Սարգիսն աւելի՞ տգէտ է, այլ և այն հոգևորականն, և նորա պաշտպանն, և նորա գերդաստանն, և նորա կնքահայրն, և սահահայրն, և նորա եօթն պորտն Սերոբէ Պատկանեանին թշնամի կը դառնային, և նորա զաւակաց ազգաւ դժբաղդութեան ժառանգութիւն։ Առաջնորդն չիմանալով Սարգիս Բենդերցեանի և տէր-Սարգիս Բերիժանեանի դիտաւորութիւնն, երբ չորս-հինգ հարիւր աջահամբոյր կը տեսանէր, ձեռն կո դնէր նուիրաբեր նուիրելոյ գլխին, բայց տէր-Սարգիսն իւրաքանչիւր ձեռնադրութենէն ունէր մեծ շահ, նիւթական աջահամբուրի կիսոյ չափ գոնէ ստանալով, և բարոյական, որ ուսեալ հոգևորականաց համար դատարկ տեղ չէր մնում, որ նոքա երբ ձեռնադրուին, տեղ ունենան, որովհետև Տէր-Սարգիսն նզովիւք նզովել էր զանձն եկեղեցւոյ մէջ ներքս չմուծանել այնպիսի անձն, որ քան զնա աւելի իմանայ..., որովհետև ինքն՝ ինքն էր, այլ ունէր և մի ամենատգէտ եղբայր՝ տիրացու Մարտին, որ բացի բեհեզ և ծիրանի զգենլոյն այլ ինչ չգիտէր, բաղաձայն և յանդուգն, բայց եկեղեցւոյ մէջ վայելուչ՝ իւր շքեղ տեսլեամբ և զգոյշ շարժմամբ։

Կաթողիկոսին ստէպ հասնում էր բողոք, որ երամակ քահանայից ստացել է իւրեան տգիտութեամբ մեծ հռչակ, և կոնդակ կոնդակի վերայ էր գրում առ Սերոբէ Պատկանեանն, թէ ընդէ՞ր ոչ բարւոք դաստիարակես։ Սերոբէ Պատկանեանն իւր անձին համար ստորնութիւն կը համարէր մտնիլ հանդիսանալ առաջնորդի կամ նորա խորհրդակցաց, և Եփրեմի կոնդակաց պատասխան միշտ այս իմաստն կունենայր, թէ միայն գիտուն և իմաստուն եպիսկոպոսի ձեռի տակէն կելանեն գիտուն և իմաստուն քահանայք, բայց և ինքն Եփրեմ չէր խնայեր իւր ձեռն դնել ի վերայ այնպիսի գլխոյ, որ ոչ թէ եպիսկոպոսի, այլ և ոչ ժամակոչի է արժանի. նա ևս էր վիճակաց իշխանաւորաց ճնշման ներքոյ։ Չէր կարող չձեռնադրել տգէտ, անգրագէտ եպիսկոպոսունք։ Թէ նա չձեռնադրէր, կերթային Գանձասար, Աղթամար, Սիս և այնտեղ կը ստանային եպիսկոպոսութիւն և, որ աւելի վատթարն է, կերթային լատին կարդինալաց մօտ և կը ձեռնադրուէին և կուգային կը մտնէին

հայոց մէջ և անթիւ անհամար շփոթից և խառնակութեանց պատճառ կը լինէին։ Սերոբէ Պատկանեանն ժամանակ ևս չունէր այդպիսի իրաց համար շփոթ յարուցանել. Նորա պաշտօնն վարժապետութիւնն էր։

## Ժ.

## Նախնական կրթութիւն Գաբրէլ Պատկանեանի

Աղաբաբեան Նիկողոս աղայն միայն վարժատուն շինելով, վարժապետին ռոճիկ կարգելով չշատացաւ, կամեցաւ երկոտասան աշակերտ պահել գիշերօթիկ։ Բենդերցեան Սարգիս աղայն և տէր-Սարգիս Բերիժանեանց եկան քարոզել ժողովրդեան մէջ, թէ այն երկոտասանից կրթութիւնն է այն խորհրդով, որ ազգի մէջ բացուի ճանապարհ զինուորագրութեան, յորմէ սարսափելով փախչում էին հայազգիք։ Աստրախանայ հազար-երկու-հարիւր գերդաստանի մէջ չէին գտնվում երկոտասան մանկունք, որ այն գիշերօթիկ աշակերտութեան սկըզբնաւորութիւն լինի, և միայն մի աշակերտ կայր, Մկրտիչ Բերոյեան, և այլ ոք չէր համարձակվում մտանել։ Աղաբաբեանք պահանջեցին Սերոբէ Պատկանեանէն, որ իւր որդւոց մին տայ ի թիւ գիշերօթիկ սանուց, և Սերոբէ Պատկանեանն տուեց իւր Գաբրիէլ որդւոյն, որ հազիւ կայր տասնամեայ, որով սրտապնդեցան և այլք, և լրացաւ նոցա թիւն։

Գաբրիէլ մանուկն ի տղայական հասակէ սկսեալ զանազան հիւանդութիւն կրելով մնացել էր թմրեալ, բթամիտ, ուսումնատեաց, խաղասէր և անհոգ. ի 1816 ամի՝ արդէն չորեքտասանամեայ էր, որ վարժարանէն հանաւ ի բաց, որպէս անպիտան, բայց յանկարծ վառեցաւ նորա սրտի մէջ ընթերցասիրութիւն, և սկսաւ ջանալ։ Յունիս, յուլիս, օգոստոս և սեպտեմբեր ամիսք շատ եղեն փթթել նորա անձնակրթութիւնն։ Ինչ որ չէր կամենում կամ չէր կարողանում ուսանել վարժատան մէջ, նոյնն ուսաւ առանձին դասախօսութիւն լսելով, սկսաւ շարադրել ճառեր, թարգմանել և ի նմին ժամանակի եկեղեցի երթևեկել։

Երեափոխեան Սարգիս աղայն լսելով թէ Սերոբէ Պատկանեանի որդին երթևեկ է անում Պետրոս և Պօղոսի եկեղեցին, որ որմնակից էր բնակարանի իւրեանց, ասաց Սերոբէ Պատկանեանին, որ իւր որդւոյն միշտ ուղարկէ աւագ եկեղեցին, որ շատ

հեռի էր նորա բնակարանէն. բայց Գաբրիէլ Պատկանեան ոչ հայելով իւր տկար կազմուածոց՝ առաւօտ և երեկոյ սկսաւ երթալ Աստուածածնի աւագ եկեղեցին, իսկ միւս ժամանակները զբաղիլ ուսմամբ ի ճիմնազիոնի, ի սեմինարիի ռուսաց, և յատկապէս ռուսաց աւագ եկեղեցւոյ աւագերէց Ֆէօդոր Ալէքսանդրօվիչի Ֆէօդօրօվի տանն՝ աստուածաբանութեան դասատուութիւն լսելով։

## ԺԱ.

## Ձեռնադրութիւն Գաբրիէլի

1816 հոկտ. ամսեան Սարգիս Բենդերցեան մի նամակ ապսպրեց ի դիմաց Յոհաննէս առաջնորդի առ Ներսէս առաջնորդն Տփխիսոյ։ Գաբրիէլ պատանին գրեց, բայց երեսփոխան Սարգիս Բենդերցեանին երևեցաւ շատ խրթին, և հրամայեց փոքր ինչ պարզ քան զայն գրել, այլ խրթինն պահեց իւր մօտ։ Գաբրիէլ պատանին գրեց և այն, և երբ բերեց Բենդերցեանի մօտ և ընթերցաւ, Բենդերցեանն տարաւ նորան Յոհաննէս առաջնորդի մօտ և ասաց. «Տիրացու Գաբրիէլն գրեց Ձեր Սրբազնութեան հրամայեալ նամակն. մին երևեցաւ շատ մթին և միւսն լաւ պարզ. բայց չգիտեմ՝ ինքն է գրել թէ՞ իւր հայրն է գրել»։

Յոհաննէս առաջնորդն ծիծաղելով պատասխանեց, թէ «այդ դժուար չէ ստուգել. այստեղ կայ թուղթ և գրիչ. թող մեր առջևն գրէ»։ Եւ ինքն սկսաւ ասել՝ թէ ինչ է իւր կամքն։ Տիրացու Գաբրիէլն իսկոյն գրեց և ընթերցաւ։ Յոհաննէս առաջնորդն զարմացաւ և ասաց՝ «Ինձ քան զայս լաւ գրագիր չէ հարկաւոր», տուեց քսան և հինգ արծաթ, որ իւր համար կարել տայ հոգևորականի զգեստ, այլ նա՝ որովհետև չէր կամենում հոգևորական պաշտօն մտանել՝ կարել տուեց աշխարհական զգեստ։ Այսպէս անցաւ այն 1816 ամին և մտան 1817 ամին։

Փետրուարի 10 էր, որ Յոհաննէս առաջնորդն հրամայեց Գաբրիէլ պատանւոյն մի Տեառնընդառաջի ճառ գրէ. նա գրեց, և Տեառնընդառաջի ճրագալուցի երեկոյեան ժամէն առաջ տարաւ։ Յոհաննէս առաջնորդն ասաց. «Ահա երեկոյեան ժամն մերձ է. ես եկեղեցի կուգամ, և երբ հրամայեմ՝ այն ժամանակն կը կարդաս»։

Առաջնորդն եկաւ եկեղեցի, և երբ «Մարմնացեալն ի կուսէն» երգեցին և գնացին ատեանն, փոխանակ «Այսօր անսկզբնական ծնունդն» սկսանելոյ՝ հրամայեց այն ճառն ընթեռնուլ, և Գաբրիէլ պատանին ընթերցաւ։ Եկեղեցին լի էր բազմութեամբ։ Երբ աւարտեց և գնաց առաջնորդի աջն համբուրել, առաջնորդն ասաց իւր սպասաւորին. «Բե՛ր»։ Սպասաւորն, որոյ անունն էր տիրացու Գրիգոր, հանեց անթատակէն մի ծրար, որոյ մէջ կայր մի ձեռք եկեղեցականի հանդերձ, այսինքն պարեգօտ, լօդիկ և գօտի. եկեղեցւոյ մէջ քահանայից յանդիման և ժողովրդեան առաջև՝ մերկացուցին աշխարհական հանդերձէն, զգեցուցին պարեգօտն, ընդ մէջ կապեցին գօտին և զգեցուցին լօդիկն, ապա նոր, ընտիր և մեծագին շապիկ, և իսկոյն սպասաւորն հանեց ծոցէն մի պատուական ուրար և մատոյց սրբազան առաջնորդին, և առաջնորդն ձգեց Գաբրիէլ պատանւոյ ուսն և ասաց. «Վասն սուրբ խաչիս պատուականի» և այլն. և երբ պահպանիչն ասաց, ինքն սկսաւ «Այսօր անսկզբնական»։ Այսպէս եղև Գաբրիէլ պատանւոյ հոգևոր պաշտօն մտանելն։ Բոլոր ժողովուրդն ուրախ և զուարթ էր. միայն տէր-Սարգիս Բերիժանեանց էր, որ երեսն դալկահար էր և մռախլապատ։

## ԺԲ.

## Տիրացու-Գաբրիէլի սկզբնական գործունէութիւնը

Առաջնորդարանի կից նոր էր շինուել երկու դահլիճ, ուր պիտի բացուէր նոր հոգևոր դպրոց։ Յոհաննէս առաջնորդն նոյն 1817 թուին զկնի սուրբ Զատկին՝ նոր կիրակի օրն քարոզ ասաց և անդ ծանոյց ժողովրդեան, թէ վաղուեան օրն պիտի բացուի հոգևոր վարժարանն, ուր պիտի լինի երկու դասատուն. վերին դասատանն վարժապետ հայոց լեզուի պիտի լինի տիրացու Գաբրիէլն, ուր պիտի երթան ամենայն հոգևորականք քերականութիւն ուսանիլ։

Միւս օրն վարժատան երկու դահլիճքն ևս լցուեցան աշակերտօք. տիրացու Գաբրիէլն սկսաւ քերականութիւն ուսուցանել։ Այն տարին եկաւ սուրբ Երուսաղէմի նուիրակ Կարապետ վարդապետն, որ յետոյ եղև Պօլսոյ պատրիարք։ Զկնի Կարապետ վարդապետի եկաւ լիբանանցի հ. Յովակիմ Սալլանթեան։ Տէր-Սարգիս Բերիժանեանի քեռորդին Մարդանեան Գրիգոր աղայի միակ որդին Քրիստափորն սկսաւ երթևեկել

նորա մօտ, և որովհետև սա քերականութիւն էր ուսանում տիրացու Գաբրիէլ Պատկանեանէն, ստէպ լուր էր բերում Սալլանթեանէն, թէ «Նա կամենում է տեսնել քո շարադրութիւնն»։ Այն ժամանակ ունէր տիրացու-Գաբրիէլ Պատկանեանն Դիոդորոս Սիկիլիացւոյ գրադարանէն թարգմանած Աղէքսանդրի Մակեդոնացւոյ պատմութիւնն, և մի վարդապետութիւն ուղղափառութեան Հայաստանեայց Եկեղեցւոյ։ Աղէքսանդրի պատմութիւնն տուեց Մարդանեանին տանել Սալլանթեանի մօտ և խնդրեց, որ եթէ սխալ ինչ գտնէ, չխնայէ իւր աշխատութիւնն և գրէ իւր ձեռամբ լուսանցի մէջ։ Սալլանթեանն ծայրէ ի ծայր քանի օր կարդալէն յետ վերջաբանութեան մէջ մի բառ է գըտել՝ «փառք երկրակալութեանն» և ասել է, թէ «երկրակալութիւն» բառ չունենք, պիտի «աշխարհակալութիւն» գրէր։ Տիրացու-Գաբրիէլն ցոյց է տուել հռոմայեցւոց պատմութեան թարգմանութեան մէջ աւելի քան քսան անգամ կրկնուած այդ բառն։ Այս եղև սկզբնապատճառ հ. Միքայէլ Սալլանթեանի և տիրացու Գաբրիէլ Պատկանեանի ծանօթութեան, և երբ կաթոլիկ ժողովուրդն հ. Միքայէլ Սալլանթեանին արտաքսեցին իւրեանց քահանայագործութենէն, տիրացու-Գաբրիէլ Պատկանեան վարձեց նորա համար մի սենեակ, ուր գիշերն կօթագայէր, իսկ ցերեկն կանցուցանէր Սերոբէ Պատկանեանի հետ։

Յոհաննէս սրբազանն սկսաւ տիրացու Գաբրիէլին տալ և իւր թղթոց թարգմանութիւնն։ Տէր-Սարգիսն, նայելով որ որքան աւելանում է տիրացու Գաբրիէլի աշխատութեանց առարկաներն, այնքան աւելի զօրանում է նորա մէջ բարակացաւի նշաններն, խորհուրդ տուեց՝ որ կոնսիստորիայի ատենադպրութիւնն ևս նորան յանձնուի. այդ պատճառաւ ռուսաց վարժապետ վարձեցին, որ օրամէջ ուսումն տայ այն դասատան, ուր տիրացու-Գաբրիէլն է, որ այն օրերն տիրացու-Գաբրիէլն պարապի կոնսիստորիայի ատենադպրութեամբ։ Այս եգիպտական ծառայութիւններն վարձատրվում էին յոյժ ժլատութեամբ, մանաւանդ կոնսիստորիականքն, ուր տէր-Սարգիս Բերիժանեանցն գիրացաւ, ստուարացաւ, լայնացաւ, ամենայն կայծ և կայծակն ձեռամբ տիրացու-Գաբրիէլ Պատկանեանի ըմբռնելով, և ամենայն փուշ և տատասկ նորա մատամբք քաղելով ինքն զծաղկունս և զվարդս և զքաղցրահամ պտուղս քաղէր և վայելէր, և թէ երբէք չկարէր կլանել՝ մասն և բաժին հանէր առաջնորդին, և ամենայն ինչ գնայր սովորական շաւղօք։

## ԺԳ.

## Առաջնորդ Յոհաննէս սրբազանի յայտնութիւնները

Տէր-Սարգսին անհաճոյ էր, որ տիրացու-Գաբրիէլ Պատկանեանն բազում անգամ սրբազան առաջնորդի հրամայած թուղթն ինքնագլուխ կը գրէր, առանց երեսփոխան Բենդերցեան Սարգիս աղայի գիտութեան, և ստէպ այս անհնազանդութիւն անուանելով չարախօսութիւն էր անում առաջնորդի առջև։ Օր մի առաջնորդն հարցուց, թէ տիրացու-Գաբրիէլն ինչ անհնազանդութիւն է արել. երբ տէր-Սարգիսն սկսաւ համարել, թէ այս ու այն թղթերն առանց գիտութեան աղա Սարգսի է գրել, առաջնորդն զարմացմամբ ասաց. «Ո՞չ ապաքէն ես ինքն եմ հրամայել, որ չիմանայ ոք. ուրեմն դու անհնազանդութի՞ւն ես կոչում իմ հրամանին հնազանդիլն, և անհաւատարմութի՞ւն ես անուանում, որ իմ գաղտնիքս ձեզ չէ յայտնում։ Այն թղթերն, որ դու համրեցիր, առհասարակ այն արգասիքն ունեցան, որպէս ես էի ցանկանում. եթէ նա յայտնած լինէր կամ քեզ կամ աղա Սարգսին, և ձեր խորհրդով այն թղթոց մէջ այլ ընդ այլոյ իմաստ խառնուէր, ուստի՞ ունիս փաստ կամ ապահովութիւն, թէ այնպէս յաջողակ պիտի վերջանային, որպէս այժմ վերջացած են։ Այդ քո համարած թղթերն մեր նամակակցութիւնքն են Վրաստանի առաջնորդ Ներսէս արքեպիսկոպոսի հետ, որ ինձ տուել է այս առաջնորդութիւնն, և ես թէ այսօր Աստրախանայ առաջնորդ եմ, նորա շնորհօք և նորա ողորմութեամբ է։ Երկու վիճակաց առաջնորդք, երկու արքեպիսկոպոսունք հայոց միմեանց մէջ եղբայրական նամակակցութիւն ունին. ինչ կը վայելէ, որ նոցա նամակաց իմաստը ամսօրեայ ժամանակօք յառաջ փողոցներումն խօսուին։ Իմ ծայրագոյն անյաջողութիւնս այն չէ՞, որ ես Ներսէս արքեպիսկոպոսի նման՝ իմ թղթերս իմ ձեռամբ չեմ գրում և կարօտում եմ տասն-ութ, տասն-եօթն տարեկան տիրացու-Գաբրիէլին։ Դեռ ևս փառք Աստուծոյ՝ որ նա այդքան շնորհ ունի, որ իմ գաղտնիքս ծածուկ է պահում։ Դուք պիտի ուրախ լինիք, որ նա այդքան խորհրդապահ է. բայց ձեր ցանկացած ճանապարհն՝ կարող է նորան մարդկութեան ճանապարհէն ևս հանել. դուք կամենում էք, որ նորա խոստովանատուն քանդուի։ Թէպէտ նա միշտ թղթերն պարզագրած է բերում, և ես

նորա առաջին ստորագրում եմ և ծրարի մէջ դնում, բայց ծածուկ ես այն թղթերն կրկին ինքնաձեռագիր պարզագրում եմ և այնպէս ուղարկում։ Եթէ Ներսէս իմանայ, թէ իմ գրած նամակներն այլք են շարադրում, և մեր միջի նամակագրութեան միտքն երրորդ գիտեցող ևս կայ, նա ինձ հետ գրութիւն չի անէր»։ Այս ասաց և ցոյց տուեց այն նամակներն, որ ունէր պահած։

(Կը շարունակուի)

# ԲՈՂՈՔԱԿԱՆՈՒԹԵԱՆ ԱՆՑԵԱԼՆ ԵՒ ՆԵՐԿԱՆ ՄԵՐ ՄԷՋ

## Ա.

Գրելով այս յօդուածը՝ մենք կը դրդուինք այն շարժումէն, որ վերջերս ծագում առած է հայ-բողոքականութեան ծոցին մէջ՝ թէև տկար, եւ որ կը ձգտի համերաշխ գործակցութեան մը ու աշխատակցութեան մը մայր-համայնքին հետ իր պարզ նշանակութեան մէջ, ինչ որ սակայն պէտք չէ հասկցուի բողոքականութիւնը ձգել։

Ասկէ քանի մը տարիներ առաջ ալ ես գրեցի բողոքականութեան դերին վրայ մեր մէջ, և անոր այդ գործունէութեանը հայ միջավայրէն կրած ազդեցութեանը մասին, Եգիպտոս հրատարակուող «Շիրակին» մէջ։

Այդ ատեն յօդուածիս դրդապատճառը կըլլար Վանայ միսիոնարներէն՝ իր գործելակերպովը և ըմբռնումներովը երբեմն անժողովրդական՝ դօքթ. Րէյնոլդսի մէկ կոչը, ուղղուած հայութեան և հայ ազգին ևս յեղափոխական յորջորջուող դասակարգին։ Ատով հայասէր միսիոնարը կոչում կընէր ազգին ողջմտութեան՝ երկրին վիճակը չծանրացնել սխալ ու բուռն գործունէութեամբ մը, որ օգուտ չբերելէն զատ՝ հայաբնակ գաւառները պարզապէս համիդական խժդժութեանց թատր դարձնելու իբր պատրուակ կրնար ծառայել։

Դօքթէօրը, որ Վանէն Մուշ, Բիթլիս և Սասուն նպաստաբաշխի հանգամանքով երկար տարիներ աշխատած էր, բնավայրին հայ ազդեցութեան ներքև՝ նման ողբացեալ Հէրբէրթ Ալէնին՝ միս Քէբըլին, միս Ցրէյգըրին և Վան աշխատած երկսեռ միսիոնարաց՝ թողլով այլևս ազգին մայր-հատուածը մոլորական, կռապաշտ և խաւարամիտ համարելու հինցած գաղափարը—բնականաբար կամաց-կամաց—այդ հատուածին հետ կրթական,

նպաստի, որբախնամ և գործերու մէջ համերաշխ և անխտրական աշխատակցութեան փորձերուն գլխաւոր դերակատարներէն կըլլար։

Հայութեան և բողոքականութեան յարաբերութեանց տեսակէտով նոր դարագլուխ մը կը բացուէր անկէ ի վեր։ Բողոքականութիւնը իր անհամար չարիքներուն հետ այն բարիքը սորվեցուց մեզ—մրրկաւ բաժնուած հայ հատուածներուն—որ առարկայ ըլլալով միենոյն Թիւրք բռնապետութեան միենոյն հայակուլ քաղաքականութեանը, և որ մեր մէջ՝ ինչ դաւանանքի ալ պատկանէինք՝ միայն հայը կը տեսնէր՝ արդարև եղբայրներ էինք համարիւն, համացեղ, դաւանական այլևս անժամանակ, անիմաստ և քրիստոնէութեան ուղիղ վարդապետութեանց և ոգիին իսպառ հակառակ մտածելակերպով մը իրարմէ բաժնուած, իրարու թշնամիներ դարձած, որմէն կօգտուէին միայն մեր արտաքին թշնամիները և օտարները՝ իրենց մասնաւոր, գծուած և մեզ համար իսպառ փնասակար շահուց տեսակէտներով։

Հիմա սակայն, որ բարքերու և ըմբռնումներու մէջ բաւական յեղաշրջութիւն մը մտած է, Հայաստանեայց Եկեղեցիին պատկանողներուն աչքին՝ բողոքականները այլ ևս պահքը լուծող, կասկածելի ծէսերու տէր անկրօնութեան հասնող մտասփարները չեն, այնքան խոտելի, արհամարհելի և հալածելի։ Ան կը զգայ այլ ևս, որ բողոքական հայն ևս այսօր հայ մըն է, ուրիշ ոևէ մէկուն չափ՝ նոյն ազգին հարազատ զաւակը։

Դաւանական տարբերութիւնները, ի սկզբան այնքան գէշ համեմատութեանց հասած, երկպառակութեան և հակառակութեանց ճշմարիտ պատճառ մը, այսօր իրենց իսկական աստիճանին իջած են, կրօնական և հաւատալեաց ուրոյն խնդրոյ մը, ազատ ըմբռնումի մը, որ այլևս չի վրդովեր ոչ ոքի խղճմըտանքը։

Յառաջդիմութիւնը երկուստեք է։ Այսօր ողջամիտ բողոքականն ևս արհամարհանքով չի նայիր, ինչպէս երբեմն սովոր էր ընել և ինչպէս դեռ ընողներ ալ կան, Հայաստանեայց Եկեղեցիին, և այդու վիրաւորել մայր-համայնքի նուիրական զգացումները, որ դեռ երէկ անոնցն ալ էր, բոլոր հայութեանն անխտիր, որ դարեր ամբողջ պահած պահպանած էր հայութիւնը—երբեքն ալ մէջն ըլլալով—ամեհի թշնամեաց դէմ՝ միշտ կանգուն և գլուխը բարձր։

Ամենէ անհամեմատ զօրաւոր ազգեր իրենց քաղաքական անկախութիւնը կորսնցնելնուն իրենք ևս անհետացան. մինչ Հայաստանեայց Եկեղեցին գերայարմար փոխանորդութեամբ մը

պահպանեց ազգային աւանդը, ըլլալով և մնալով մէկը՝ և անվիճելիօրէն ամենագլխաւորը՝ անոր տեւականութեան ազդակներէն և սիւներէն—կենսալից և իր տկարութեան մէջ հզօր—որ կըլլայ ինքնին Հայ Եկեղեցւոյ քննադատներուն պերճախօս պատասխանը և անոր սրբութեան և մեծութեան ամենապատուաբեր ապացոյցը։

Ահա այս և նման բազմաթիւ պարագայից լուսաբանութիւններն իրենց ազդեցութիւնը ունեցան, և այսօր, վերջապէս, եթէ ոչ իրականութիւն մը—ատիկա դժբախտաբար դեռ հեռու է—բայց երկու հայ համայնքներուն մէջ հանրային բնութիւն ունեցող խնդրոյ մէջ համերաշխ գործակցութեան գաղափարը տարածուելու և տակաւ մարմին առնելու վրայ է, մանաւանդ կրթական և դաստիարակչական հողին վրայ։

Մարաշի լուսաւորչական և բողոքական ազգայինները, վերջին դպրոցական շրջանէն սկսեալ, միացած ոյժերով միակ կեդրոնական մը կը պահպանեն, որ կը կառավարուի երկու հասարակութեանց ականաւոր և զարգացած անձնաւորութիւններէ կազմուած ուսումնական խորհուրդէ մը և ուր կը յաճախեն, անխտիր, երկու հասարակութեանց ծաղկոցներէն ելլող յառաջադէմ աշակերտները։

Այս ուշագրաւ ձեռնարկը, իսկապէս յանդուգն նորութիւն մը Կիլիկիոյ համար, որ ամենուստ նախապաշարեալ բողոքականներու մէջ իրարանցում մը առաջ բերած է, իր նախընթացները ունեցած էր Հայաստանի զանազան կողմերը, մանաւանդ Վասպուրական, ուր հայ և բողոքական յարաբերութիւնները վաղուց նորմալ և ուրիշ տեղերը եղածէն տարբեր ոգիով մը առաջնորդուած են։

Բողոքականութիւնը հասած է ատեն, որ մեր մէջ փոխանակ ըլլալու անջատումի և դաւանական անմիտ հերձուածներու ազդակ մը, դառնայ և ըլլայ փնտռուած բարիք մը՝ իբրպէս գնահատելի, անգլօ-եանքի քաղաքակրթութեան թարմ, առողջ գաղափարներուն և գործնական ոգիին մեզ ներշնչումին, մեր մէջ ներմուծումին ոյժը, ինչ որ հայկական տոկուն և աշխատասէր նկարագրին հետ պիտի կրնայ նոր նկարագիր մը ըստեղծել մեզ, իսկապէս տարբերուող հինէն, և ստոյգ այլասերումէ ազատել ցեղ մը, որ որքան ալ դժուարութեանց դիմանալու և բռնապետութեան դէմ մաքառելու ապացոյցներ տուաւ, ցոյց տուաւ սակայն, որ ազատութեան մէջ իր խաղաղ գոյութիւնը պահպանելու չափ խելացի և ընդունակ ժողովուրդ մը ըլլալէ հեռու է։ Ցոյց տուաւ յստակօրէն դժբախտ կազմալու-

ծութեան մը, քաղաքացիական անհեռատեսութեան, անկումի և յոռեշրջութեան այնպիսի նշաններ—չափազանց յատկանշական՝ որքան տաժանելիօրէն ցաւագին—որ ամեն հայու խորհիլ պէտք է տայ լրջօրէն։

Վեց-եօթն դարերէ ի վեր հայ ցեղին իր ինքնապահպանութեան համար մղած բուռն կռիւը երբեք այնքան բացայայտ երևան բերած չէր—այն՝ ինչ որ գրիչի այնքան դիւրութեամբ մը կարգ մը գրողներ «հայեճական յատկութիւնները» անունով կը պանծացնէին—մեր խեղճուկ սնապարծութիւնը և բարոյական սնանկութիւնը, քան ինչ որ ցոյց տուին օսմանեան ազատութեան այս քանի մը տարիները։ Ցուսահատական յուսաբեկութիւն մը պարզապէս....։

Այս տեսակէտներով է որ մենք վերջին ծայր օգտակար կը համարինք դաստիարակութիւնը» ոգիին ներշնչումը այն մեծ ազգերուն, որոնք—մասնայատուկ քաղաքակրթութեամբ մը հզօր, վերջին ծայր գործնական և դրական ժողովուրդներ, պաղարիւն և իրապէս մեծ յատկութեանց տէր—պիտի կրնային մեզ նման տկար և ինկած հասարակութեան մը համար, որ սակայն կենսունակութենէ իսպառ զուրկ չէ, ի շարս ուրիշ քաղաքակիրթ ազգերու ըլլալ օգտակար առաջնորդ մը, գաղափարական յառաջդիմութեան նոր խմորի մը հիւթը։

Ահա թէ մենք ինչպէս կըմբռնենք և կը փափաքինք, որ ըմբռնելի ըլլայ՝ մեր մէջ, յետ այսու, ամերիկեան, անգլիական և նոյն իսկ գերման բողոքական միսիօնարութեանց դերը։ Ամեն ուրիշ, ինչ որ ալ ըլլայ և ըսեն, պէտք է համարել զուր, վնասակար և հետևաբար ջլատիչ մեր ազգային անհատականութեան և նկարագրին զօրեղացման։

Մեր դերը և նպատակակէտը օսմանեան համերգին մէջ ասկէ վերջ էականապէս կրթական, տնտեսական և քաղաքակրթական ըլլալուն՝ այդ կերպով է, որ մենք դեռ կրնանք զարգանալ, զօրանալ և մեզ ինկած բաժինը արժանաւորապէս իրագործել օսմանեան հայրենիքին վերածնութեան առթիւ։

Եւ ատոր համար պէտք ունինք, առաւել քան երբեք, քաղաքակրթական այնպիսի սկզբունքներու իւրացումին և մարսումին, որոնք օգնեն մեզ և մենք կարենանք՝ մեզ համար յետ այսու միայն կենսական՝ այդ ձգտումին և նպատակակէտին հասնիլ։

Այս տողերը գրելով անշուշտ մենք ոչ ըսել կուզենք և ոչ ալ կանգոսնենք, թէ պէտք է թողուլ եւրոպական միւս մեծ ազգերուն և քաղաքակրթութեանց հետևիլը և անոնցմէ ևս օգ-

տուփլ ջանալը։ Ո՛չ։ Այլ որովհետև մեր խօսքը հոս բողոքականութեան և անոր միսիոնարութեանց մասին է, և այսօր անոնք մեր մէջ արդէն հաստատուած հզօր կազմակերպութիւն մըն են, որ ունին մենէ իրենց ուրոյն հատուած մը իբր հետևորդ, որ կրթական մեծկակ հաստատութիւններ կը պահեն—Պօլսոյ Ռոբէրթ Գօլէժէն սկսեալ Մարզուանի, Խարբերդի և Այնթապի Գօլէժները, Բէյրութի Միջազգային Բժշկական Համալսարանը, ուր բաւական թիւ հայութիւն մը կուսանի, Մարաշի Աղջկանց Գօլէժը, Այնթապի Իգական Սեմինարիան, Մարաշի Աստուածաբանական Վարժարանը, Պարտիզակի և Ադաբազարի վարժարանները, Տարսոնի Գօլէժը և այլն և այլն—թողլով բազմաթիւ երկրորդական վարժարանները ամենուրեք, բազմաթիւ երկսեռ որբանոցներ հարիւրաւոր որբերով, հիւանդանոցներ և վերջապէս կրթական, կրօնական և բարեգործական հաստատութեանց մէջ իրենց հզօր ազդեցութիւնը և մասնակցութիւնը։ Այս ամենքը, ըսել կուզեմ, մեր մէջ բողոքականութեան դերը աւելի յստակ, աւելի ցայտուն առաջ կը բերեն, առանց մոռցնել տալու, օրինակի համար, Ֆրանսական հսկայ ազդեցութիւնը Թիւրքահայ լուսաւորչական հատուածին վրայ և անդին՝ գերման և ռուսական քաղաքակրթութիւնները՝ ռուսահայերուն զարգացման և բարքերուն վրայ։

Անոնց գոյութիւնը մեր մէջ մտած՝ կրօնական վարդապետութեան մը դիմակին տակ՝ և տեղաւորուած արդէն աւելի քան միւս ազգերուն, մեր ձեռքը չէ - և չենք ալ ուզեր—զանոնք մերժելը կամ արտահանելը։ Կը մնայ ուրեմն գիտնալ զանոնք օգտեցնել՝ ոչ թէ դաւանական այլևս անժամանակ քարոզութեանց տեսակէտով՝ սին և վտանգաւոր կռքեր գրգռող, այլ նոյն իսկ մեր ազգային յառաջդիմութեան—բարոյական, կրթական և տնտեսական—տեսակէտներով, իւրացնելով, մարմնացնելով անոնցմէ ինչ որ մաքուր է, մեծ, դրական և գեղեցիկ, և այդու մեր ժողովրդական վերածնութեան ատաղձը ազնուացնել։

Բ.

Եթէ այս է բողոքականութեան օգտակարութեան տեսականը, միևնոյն չէ, դժբաղդաբար, իրականութիւնը։

Եթէ արդարև, ինչպէս ըսինք, ըմբռնումներու մէջ երկուստեք զգալի փոփոխութիւններ տեղի ունեցած են դէպի

լաւը, և հայ ու բողոքական յարաբերութիւնները նոյնը չեն՝ ինչ որ էին սկզբան, բայց դեռ հեռու է վիճակը, որ բաղձալի է և ժամանակակից պահանջ մը այլևս։

Մենք պէտք ունինք համերաշխութեան՝ որպէս մէկ ազգի զաւակներ։ Այդ պէտքը կենսական է, որպէս զի մենք կարենանք իրարու լրացուցիչ մասեր դառնալ, իրարու ամբողջութիւնը։

Միսիօնարութիւնը նոյնպէս՝ անշուշտ թթուած և հինցած տիպերէն դուրս՝ սկսած է տակաւ հասկնալ, թէ մեր մէջ իր հին գործունէութեան շրջանը գոցուած է այլևս։ Եւ թէ՝ պարզակեաց ժողովրդեան մը ծոցին մէջ կրօնական կրքեր արծարծելով հետևորդներ ունենալու մէթոդը այլ ևս ոչ միայն յաջողութեան և համակրութեան չի կրնար արժանանալ, այլ խոչընդոտներու դուռ կը բանայ։

Ատով ալ միսիօնարական հասկցող այդ դասակարգին համար իրենց գործունէութիւնը այլ ևս հայերը «քրիստոնեայ և աւետարանական» դարձնելու ծիծաղելի և ընդունայն աշխատութենէ աւելի քաղաքակրթական և մարդասիրական գործունէութեան մը կը վերածուի, իսկապէս աւելի բարձր և գաղափարական։

Այս մխիթարական երևոյթը օր ըստ օրէ կաճի-կաւելնայ, թէև յամր, և հաւանական կընծայէ, որ ժամանակին հետ համերաշխական փորձերը իրականութիւն գտնեն։ Բայց մինչ այդ՝ կան ու կը մնան անշուշտ դժուարութիւններ և խոչընդոտներ, կարծուածէն աւելի ծանր և մեծ։ Այս յեղաշրջութիւնն ևս առանց ցնցումներու, յուզումներու և ընդդիմութեանց պիտի չըլլայ։

Սակայն եթէ այսօր, այս շարժումին առթիւ, մատնանըշելու կարևոր երևոյթ մը կայ, այն է՝ որ համերաշխ գործակցութեան փորձերուն ընդդիմադիր և չուզող տարրը լուսաւորչականներէն աւելի բողոքական հասարակութիւնն է, որ կարծես կը զգայ տկարութիւնը և տեղատու անդիմացկունութիւնը իր այն սկզբունքներուն, որոնք իսպառ անտեղիտալի և հզօր կարծած էր սկզբան, Մայր-Եկեղեցիէն իր բաժանումը արդարացնելու չափ։

Այսօր անոնք արդեամբ կը տեսնեն, թէ ինչպէս Հայաստանեայց Եկեղեցին ոչ միայն Կաթոլիկ Եկեղեցիի աններող ոգիէն, միտքը, կամքը և հոգին ճնշող, կապտող բռնաւոր ընթացքէն իսպառ զերծ է, այլ ընդհակառակն ժողովրդական և ազատ սկզբունքներով առաջնորդուած հաստատութիւն մըն է, շատ աւելի լայնամիտ, ներող, թոյլատու և իսկապէս քրիստոնեա-

կան, քան ուրիշ ոեւէ եկեղեցի՝ բողոքականութիւնն ալ մէջն ըլլալով։ Կը տեսնեն, թէ ինչպէս Հայ Եկեղեցին բնաւ անքակտելի կապերով կապուած չէ ծիսական, արարողական անհարկի կարգերու, ինչպէս Կաթոլիկ Եկեղեցին, և թէ տակաւ տակաւ, ժամանակին պահանջմանց համաձայն, առանց անշուշտ հիմնական հաւատալիքներուն դիպչելու՝ ամենէն դիւրին կերպով բարեկարգուելու ընդունակ եկեղեցին է։ Եկեղեցի մը, որու քահանաներէն սկսած մինչև ծայրագոյն պատրիարք-կաթողիկոսը ժողովրդին միջոցաւ և կամքովը կընտրուին և անոր պատասխանատու են։

Այո՛, անոնք կը տեսնեն՝ ինչ որ չէին ուզած քննել իրենց յախուռն անջատումին առթիւ՝ այս ամենը, կը տեսնեն ու կը հաստատեն հայ ըմբռնումներուն մէջ դէպի եկեղեցական բարենորոգումը կատարուած հսկայ յեղաշրջութիւնը, որով շատ մը սնոտի և աւելորդ սովորութեանց ինքնին վերջ մը դրուած, միւսներն ևս ատենին հետ պիտի կարգադրուին։ Արդէն կարևոր փոփոխութիւններն ևս օրինական ճամբով հարթելու համար հրապարակային խորհրդածութիւններ խնդրոյն հասունացումը կը պատրաստեն։

Ու այս ամենը, սակայն, ակամայ երկիւղով մը կը լեցնեն բողոքական դեռ ազդեցիկ դասակարգէ մը այն հին տիպերը, որոնք հայ-բողոքականութեան ուրոյնութիւնը և մայր-համայնքի հետ անջատականութիւնը յարմար կը համարին իրենց մասնաւոր դիտումներուն, շահերուն և փառասիրութեան։

Իզմիրլեան կաթողիկոսին մահուան առթիւ շատ տեղեր երբ մեր բողոքական եղբայրներն ևս, առանձինն կամ մեզ հետ, մեծ-սուգին արարողութեանց մասնակցեցան, խնդիր ծագեցաւ։ Իրենց մէջ խորհուրդներ եղան և նոյն իսկ մամուլի էջերուն միջոցաւ հարցնողներ գտնուեցան, թէ ինչո՞ւ մայր-համայնքէն ելլող և Հայաստանեայց Եկեղեցիին ծառայող այդ հըսկայ դէմքերէն—որոնք ազգային կենաց վրայ այնքա՜ն խոր և տևական ազդեցութիւն մը ունեցան—հայ բողոքականութեան ծոցէն ևս չծնան բնաւ։

Այո՛, կը խորհին անոնք, և իրաւամբ, թէ ինչո՛ւ այս կէս դարէ աւելի ժամանակի մը մէջ իրենք ևս չկրցան արտադրել Ներսէսներ, Խրիմեաններ, Իզմիրլեաններ և այլն և այլն։ Եւ ասիկա հակասական բան մը չէ՞ր ըլլար իրենցմէ յետադէմ դաւանուած Եկեղեցիի մը՝ Լութերական լուսամիտ Եկեղեցիին հետ բաղդատութեան առթիւ։

Ի՞նչ բան կօգնէր, կը դիւրացնէր ստեղծելու Հայ Եկե-

*ղեցւոյ ծոցէն այդ մեծ դէմքերը, կը նպաստաւորէր անոնց բարձրացումին, ինչ որ կը Թուի, Թէ չէր կրնար ըլլալ Բողոքական Եկեղեցին մեր մէջ՝ իր յաւէտ նպաստաւորեալ վիճակովը։*

*Պատասխանը, բարեբաղդաբար Թէ դժբաղդաբար, քաջալերական և յուսադրական չէր այդ հարցումը ուղղողներուն, ըլլայ ազգային և ըլլայ մանաւանդ դաւանական տեսակէտով, որոնք ակամայ ստիպուած էին խոստովանիլ Թէ՝* կրօնական հողին վրայ սոսկ բողոքական հաստատութիւն մը եւ վարդապետութիւն մը այլ եւս կորսնցուցած էր իր հմայքը։ *Բողոքականութենէն շատ հին քրիստոնեայ, հաստատուն ազատ և լայնամիտ Եկեղեցիի մը ընդդէմ իրենց բաժանողական մաքառումը ոչինչ օգտակար չարտադրելէ զատ՝ իրենց ջանքերուն և մըրցումներուն ունայնուԹիւնը միայն ապացուցանելու կը ծառայէր։*

*Եւ անոնք ևս, այդպէս խորհողները, մեզ նման դատել սկսան, Թէ արդարև հարկ անհրաժեշտ էր ուրիշ ուղղուԹիւն մը տալ հին սիստեմին, որուն վնասակարուԹիւնը չտեսնելու համար մոլեռանդ մը ըլլալու էր և ճշմարտուԹեան հակառակորդ մը, և փնտռել այն նոր և յարմար ուղղուԹիւնը, որ առանց մայր-հատուածին դէմ վտանգ մը և անջատման ահաբեկումի գործիք մը ըլլալու՝ ամբողջ ազգին կրօնական, կրԹական, բարոյական և տնտեսական բարձրացումին պատուանդաններէն մէկն ըլլար։ Գերազանցօրէն աւելի բարոյացուցիչ, քան ուրոյն դաւանական վարդապետուԹիւն մը։*

*Ամենն այս չէ։ Բողոքական ողջամիտ հետազօտողները, ցաւով Թէ ուրախուԹեամբ, չգիտենք, բայց յաջողած էին հաստատելու անհերքելի վիճակագրուԹիւններով Թէ՝ 1°* Քսան տարիներէ ի վեր բողոքականութեան թիւն եւ աճումը դադրած է այլ եւս հայերուն մէջ։ 2° Ուր որ դադրած կամ նուազած է Պօրտին նիւթական աջակցութիւնը—*ինչ որ հանրային պարտքը ինքնայօժար չհատուցանելու կարգ մը մարդկանց փախստավայրը կը դարձնէր Բողոքական Եկեղեցին*—այնտեղերը բողոքականք կը պակսին, կը նուազին օր ըստ օրէ։ 3° Եւ վերջապէս կը հաստատուի, որ տարուէ տարի իրենց հետեւորդներուն մէջն եւս Հաղորդութիւն առնել ուզող անդամոց թիւը զգալաբար կը քիչնայ եւ նուազ հետամուտներ կը գտնուին այլ եւս այդ շնորհաց արժանանալու ցանկացող։

*Անոնք որ բաւական ուշիմուԹիւն ունեցած են Մայր-Եկեղեցիին շուրջ կատարուող յեղաշրջումները—դէպի առաջ—բաղդատել բողոքական հասարակուԹեան մէջ կատարուող այս*

աննպաստ երևոյթներուն, դժուար չէ եղած եղբակցութիւնը հեռացնելու։

Բողոքականութիւնը, իր հին սիստեմով, մեր մէջ միմիայն կոյր և մոլեռանդ հետևորդներ ունենալու ճիգէն մղուած, հզօր ընկերութեան մը նիւթական ձեռնտուութեամբ զօրացած, հրատարակչական աժանագին և ընդարձակ գործունէութեամբ մը օժտուած — ուրիշ բան է, թէ բոլոր այդ հրատարակութիւնները նոյն չափով օգտակա՞ր էին թէ ոչ — ժամանակ մը մեր դեռ տգէտ, միամիտ, աղքատ և չտես հասարակութեան մէջ կրցաւ մասամբ մը յաջողիլ։

Միսիոնարութիւնը, որ ատեն մը մեր մէջ ուզեց ըլլալ իրեն հայ հետևորդներուն համար ամեն ինչ — հովիւ, տնտես, կառավար, խելք, քսակ, զօրութիւն և փրկութիւն — այո, ամեն ինչ, և ամեն բան իրեն ձեռքը կեդրոնացնել ուզեց, ինքն՝ որ մեր ներքին ընկերական կեանքը, եկեղեցական կազմը չէր ճանչնար և քննել չուզելու չափ ալ նեղմիտ ուղեղներէ կազմուած էր, սխալ առաջնորդութեամբ մը ոչ միայն միսիոնարական գործը վտանգեց և վարկաբեկեց, այլ և հայ համայնքին մէջ առհասարակ բաւական նախաձեռնարկ ոգիի տէր՝ իրենց հետևորդներուն անհատականութիւնը սպաննեց։ Մէկը գլխաւոր պատճառներէն, որ եթէ հայ բողոքականութիւնը ունեցաւ զարգացած և գիտնական անձնաւորութիւններ, բայց չտուաւ երբեք զօրեղ անհատականութիւններ։

Հայ բողոքականութիւն մը, այս եղանակաւ, եղաւ մանուկ մը, որ սահմանուած չէր աճելու, մշտակայ խնամակալեալ մը, որուն հարկաւոր չէին և պէտք չէր թողնուէր անհատական ճիգ մը, հզօր շարժուածք մը և անկախ մտքի արդիւնք արտայայտութիւն մը։

Կաթոլիկ կղերը, իրեն հետևորդներուն ձեռքը գտնուած աշխարհաբար կամ հասկնալի լեզուով եղած Սուրբ Գիրքն անգամ կը շտապէ վերցնել, իրեն տխեղծ ազդեցութեան տեսակէտէն որպէս վնասակար բան մը անշուշտ։ Այդ կարգի միսիոնարք ևս ասիացի «տգէտ», «հեթանոս» և փոքրիկ հայ ազգին զաւակները դիտելով ամերիկացիի բարձրէն հայեացքովը՝ իրենց գաճաճ այդ հետևորդներուն ոչինչ կը թողնէին ընել, խորհելով թերևս որ անոնց ինքնագործունէութիւնը և ինքնագիտակցութեան արթնումը իրենց գործունէութեան սահմանը պիտի նշանակէր։ Եւ արդարև։

Անկէ ի վեր, երբ Ամերիկեան Պօրտը, աւելի խելացի ներշնչումներէ ազդուած, հայ-բողոքականութեան վարչութիւնը

կամաց-կամաց տեղացիներուն ևս յանձնելու սկզբունքը ընդունեց, երևան եկաւ, որ մինչ այն ատեն զինք ներկայացնող միսիօնարները սխալ հողի մը մէջ ցանած էին լութերական վարդապետութեան սերմերը, որ դէպի առաջ յեղաշրջումի տակ աւելի հզօր բնիկ ծիլերու մէջ արդէն կը կորսուէր, չըսելու համար՝ կը խեղդուէր։

Եւ եղաւ որ ան ալ կամաց կամաց հասած է և դեռ պիտի հասնի, ըմբռնելու որ իր գործը Արևելքի այս փոքրիկ, իրաւ, բայց ուշիմ ազգին մէջ զարգացական (կուլտուրական) անդին անցնելու չէր։ Եւ թէ ըլլալիք յեղաշրջութիւնը—հեռի անջատական քաղաքականութենէ մը—համակամ և ըմբռնուած ջանքերով միայն կրնար յաջողիլ։

Գ.

Անոնք որ հետևած են Լութերի բարեկարգութեան պատմութեանը, պիտի հաստատեն, թէ Բողոքական Եկեղեցին ևս Վիթթէմբէրգի մեծ-յեղաշրջողին գծած սահմանաց մէջ անվըթար և անփոփոխ չմնաց։

Լութերի կենդանութեանն իսկ Զուինգլ հելուետիացի քահանան և իտալացի Գալվին յայտնի տարբերութիւններով դըրին միևնոյն Եկեղեցիին հիմը, որ անկէ ի վեր նոյնպէս չէ դադրած ամեն տեսակի փոփոխութեանց թատր հանդիսանալ։ Մաքուր և աւետարանական պարզ Եկեղեցիէն սկսեալ մինչև Երիցական, Եպիսկոպոսական, Շաբաթապահական, Հոգեկան (րուհջի), Մորմոնական և այլն տեսակները։

Մեր մէջ ալ բողոքականութիւնը այս տարօրինակ և երբեմն իսկ այլանդակ ձևափոխութեանց ենթարկուելէ զերծ չը մնաց։

Կիլիկիոյ մէջ բողոքական յայտնի ազդեցութեան տակ լուսաւորչականաց ծոցէն ծնած է «Մուհաբէթջիութիւնը», տեսակ մը աղանդ, Աւետարանի սկզբունքներուն վրայ հիմնուած, որպէս թէ, և առանց Հայ-Եկեղեցիէն անջատման գաղափարի։

Եկեղեցիներու մէջ կամ մասնաւորաց տուները կը հաւաքուին անոնք, կիները և մայրերը զատ զատ կամ երբեմն խառըն, ուր երգերով Աստուած կը փառաբանեն և կը ջանան կրօնական ոգին վառ պահել իրենց հետևորդներուն մէջ։

Ատեն մը կառավարութիւնը այս ողորմելիներուն ողորմել

գործունէութիւնն ալ հալածել սկսաւ։ Ինչ որ քարոզչական բանմըն էր, բնական էր որ Համիդին գործելակերպին չյարմարէր։

Այնու ամենայնիւ «մուհաբէթճիութիւնը» բաւական տարածում գտած է Մարաշին ենթակայ գիւղերուն մէջ և բաւական հետևորդներ ունի Մարաշ, Զէյթուն, Ֆռնուզ, Այնթապ, Պապան և ուրիշ տեղեր։

Այս աղանդին հիմնադիրը հայ կին մը եղած է, կըսուի, բնիկ մարաշցի, որ բողոքականութեան նշանաւոր կեդրոն մըն է, 600 տունէ աւելի հետևորդներ ունի, և իր ազդեցութիւնը առհասարակ տարածած է նոյն իսկ լուսաւորչականաց վրայ ևս։

Շատ տեղեր, մանաւանդ Զէյթուն, անձամբ կրցայ հաստատել, որ «մուհաբէթճիները», ընդհանրապէս իգական սեռէն, մեծ տուներու նախօրեակներուն ամբողջ գիշերներ եկեղեցեաց վերնատունը հաւաքուելով՝ մինչև լոյս կերգէին։ Իրենց տեսակի երգեր—տեսակ մը մեղեդիներ—կոշտ, անտաշ և անճաշակ, որ բնաւ նմանութիւն չունէին մեր շարականաց եղանակներուն հետ։

Այսպէս ալ, ինձ առիթ եղած է տեսնել այս աղանդին առաքեալները, որ բան-գործ ձգած կամ, աւելի ճիշտ, բան-գործ ըրած՝ գիւղէ գիւղ կը պտտէին իրենց վարդապետութիւնը տարածելու և հաւաքոյթներ կազմակերպելու համար շոնթալից աղաղակներով, որ գիւղական հանդարտութիւնը կը խանգարէր։

Ինչ որ սակայն տարօրինակ է հաստատել, այն է, թէ այս աղանդին հետևորդները ոչ միայն չեն պաղած մեր Եկեղեցիէն, այլ և շատ տեղեր ես անձամբ տեսած եմ քահանաներ, որ «մուհաբէթճի» են, ջերմեռանդ, սակայն ատիկա արգելք մը չէ եղած իրենց եկեղեցական պարտաւորութեանց կատարումին։

Հայ Եկեղեցին ևս այս պարագային մէջ, ինչպէս միշտ, ներշնչուած իր ազատ և ներողամիտ սկզբունքներէն, զգուշացած է զիրենք վիրաւորող ընթացքի մը հետևելէ, այլապէս «մուհաբէթճիութիւնն» ևս, այժմ այնքան աննշան և անվնաս, անջատումի մը պիտի կրնար յանգիլ թերևս։

Եթէ «մուհաբէթճիութիւնը» այս պայմանաց ներքև բնիկ արտադրութիւն մը կարելի է համարել, բողոքական ազդեցութենէ ծնած ստուգօրէն, այնպէս չէ սակայն «Բուհջիութիւնը», որ օտարամուտ է մեր մէջ և մէկը բողոքականութենէն ցայտած, ըսենք՝ վիժած, հարազատ անհեթեթութիւններէն։

Ինչպէս որ «մուհաբէթճիութիւնը» իր տարածումը գտած է լուսաւորչականաց մէջ և մինչև իսկ քահանայից մէջ, «բուհջիութիւնն» ևս իր ճարակը բողոքականաց մէջ ըրած է աւե-

լի։ Կան և կը գտնուին բազմաթիւ ականաւոր պատուելիներ, որ «րուհջի» են։

Ըսի, թէ օտարամուտ է այս աղանդը, որ նոյնպէս Կիլիկիոյ մէջ բաւական տարածում ունի։ Կիլիկիա բողոքականութեան տեսակէտով նպաստաւոր հող մը եղած է սկզբանէ անտի, դրուած ըլլալով որ հոն տոհմային զգացումը՝ ազգային լեզուին տկարութեամբը և ազգային իշխանութեան անկերպարան վիճակին բերումովը՝ նուազ զօրաւոր եղած է։ «Րուհջիութիւնը» հոն բերողն է օտար միսիոնար մը, որ իր վարդապետութեան սկզբնաւորութիւնը նորէն Մարաշի մէջ գտած է։

Որքան որ «րուհջի» բառը կը նշանակէ՝ ըլլալ աւելի հոգևոր, մաքուր և գաղափարական քրիստոնեայ—տարր ինչ տարակոյս—այնուամենայնիւ այս աղանդը մեր մէջն ալ ունեցած է իր զաւեշտական, ծիծաղելի և ապականիչ կողմերը։ Այնպէս որ՝ այսօր «րուհջիութիւնը»՝ ըլլայ լուսաւորչականի և ըլլայ իսկ բողոքականի աչքին մաքուր վկայական մը չէ պատկանողին։

Երբ մէկը կը տեսնէք, այս կողմերը, վերջին ծայր երևոյթով խոնարհամիտ, որ խօսելու, շարժելու և նոյն իսկ գործելու տարօրինակ, ապուշ և մասնայատուկ ձևեր մը ցոյց կուտայ, ինչպէս հին ատեն հայութենէ նոր բողոքական դարձողները, կրնաք կռահել, որ դիմացիննիդ՝ եթէ «կապելիք» մը չէ՝ կամ «րուհջի» է և կամ «րուհջիութենէ» ընթացաւարտ մը։

Անոնք ալ ժողովարանական սովորական հաւաքոյթներէ զատ ունին իրենց ուրոյն ծէսերը, արարողութիւնները և հաւաքումները, գրեթէ միշտ՝ մասնաւորաց տուներու մէջ, և ամեն ոք ազատ չէ այս հաւաքոյթներուն ներկայ ըլլալու, մանաւանդ ծիսական և մասնայատուկ արարողութեանց։

Խոստովանութեան և զղջումի տարօրինակ սովորութիւններ ունին եղեր, որ ժողովրդեան մէջ այլ ընդ այլոյ խօսակցութեան և ծիծաղի միանգամայն առարկայ եղած է։

—Եղբա՛րք և քոյրե՛ր,—կը սկսի գլխաւորը.—այսօր այս հանդիսաւոր հաւաքոյթին մէջ նայինք Սուրբ Հոգին ո՛րքան զղջացողներ պիտի բերէ, ո՛րքան մաքրումներ ու խղճի թեթևացումներ։ Ուստի կը հրաւիրենք ներկաները հրապարակաւ պարզելու իրենց արարքները՝ թողութիւն ստանալու համար։

Եւ ահա՛, ասկէ անկէ, այս ու այն անկիւնէն մարդիկ, կիներ ոտք կելլեն ու կը սկսին իրենց տգեղ կեանքին դրուագները։

Յետոյ, երբ լռութիւն կը տիրէ, զգացումներն գրգռելու

համար մեծաւորը նորէն կը սկսի.

—Էհ, ա՛լ փրկութիւն խնդրող չմնաց։ Պակսեցաւ Ս. Հոգիին ներշնչումը։ Չկա՛ն ուրիշ զինք որոնողներ։

Եւ կելլէ մէկը, որ կը սկսի խօսիլ.

—Այո՛, շաբթուս մէջ այնքան լիտր օսպ առի, և որպէս զի աւելի շահիմ ծախած ատենս, այնքան ջուր խառնեցի մէջը։ Ժողովիս աղօթքին կը դիմեմ...։

Ուրիշ մը, որ կերևի այդ սուտ բարեպաշտին խաբէութեան զոհերէն է, կը համարձակի սակայն երեսին տալ թէ՝

—Թողութիւն խնդրելէ առաջ, սանկ, գողցածներդ ետ տաս նէ։

Ուրիշ զաւեշտ մըն ալ կը պատմեն։

Մարդուն մէկը կարմրելով ոտք կելլէ իր մէկ մեղքին թողութիւնը խնդրելու համար. մինչ մեծաւորը անդիէն կը մղէ և կը քաջալերէ զինք անվախ և համարձակ ըլլալու։

—Լաւ ուրեմն, եղբարք, յափշտակութեան վարկեանի մը մէջ, այս-ինչ «քոյրերնիս» համբուրեցի։

Եւ մատնանշելով աղջիկը՝ ժողովրդին կը դիմէ իր մեղքին թողութեան աղօթակից ըլլալու։

Եւ երբ ան կը նստի, ահա՛ առաջ կուգայ «քոյրը»։

—Եղբարք—կը դողդողջէ,—արդարև աղօթենք և խնդրենք Տիրոջմէն մեր այս «եղբօրը» համար, որ այժմ իսկ բոլորիդ ներկայութեան Աստուծոյ մեղանչեց։

Ներկաները, որ լուռ դօն-ժուանական այս կատակերգութեան կունկնդրեն, կը կարծեն երիտասարդին խօսքերուն դէմ հերքում մը լսել։

—Սուտ ըսաւ այս «եղբայրը»,—կը յարէ «քոյրը»,—ստեղ հոս Աստուծոյ և ամենուդ առաջ... Անգամ մը չէր որ համբուրուեցանք, այլ երկու։

Եւ այս կարգի արարողութիւնքը և այլանդակութիւնները երբեմն այնքան կերկարին եղեր, որ կը պատմեն թէ՝ կանխազգուշութեան համար անկողիններ ալ կունենան հաւաքատեղիին մէկ անկիւնը, ուր քնատները իրենց քունը կը քաշեն, մութ և դժգոյն լոյսին ներքև։

Մարաշի մէջ ինձ պատմեցին նոյն իսկ, որ այս վիճակէն օգտուած մութին և արարողութեան միջոցին «քոյր» և «եղբայր» միասին հանգստացած են նոյն անկողնին մէջ։

Թէ ո՛ր աստիճան ստուգապատում են այս կարգի պատմութիւնք, զորս մենք կարճառօտ մը գրեցինք, չգիտեմ։ Սակայն աս իրաւ է, որ անոնք շատ յոռի և պժնդակ տպաւորու-

*թիւն մը ձգած են ժողովրդեան մէջ, որով նոյն իսկ «բունջիութեան» ծննդահայր բողոքականները կը զգուշանան հրապարակաւ այլ ևս իրենց* պաթրօնաժը *նուիրել անոր, թէև, ինչպէս ըսինք, ծանօթ պատուելիներ անգամ կը գտնուին, որ «բունջի» են կամ եղած են ատենօք։*

*Մորմոնականութեան նման աղանդներու ծնունդը նպաստաւորող վարդապետութենէն այս կերպ ըմբռնուած «բունջիութեան» մը երևումը շատ ալ տարօրինակ պէտք չէ գտնել։*

*Միամիտ, տգէտ և մոլեռանդ անհատները և հասարակութիւնքը միշտ աւելի հակում ունին դէպի այնպիսի բաներ, որոնք միստիք և խորհրդաւոր երևոյթ մը ունենալով հանդերձ՝ մարմնաւոր կրքերը ևս կը շոյեն ու անոնց ինկած բնազդը կը քաջալերեն։*

*Մենք յիշեցինք ասոնք լոկ իբր երևոյթներ, ոչ որովհետև այնպէս կը կարծենք, թէ բողոքականութիւնը ճշտիւ այս կամ այսպէս է եղած մեր մէջ։ Ո՛չ, քաւ լիցի։ Այլ ցուցնելու, թէ այն եկեղեցական կազմակերպութիւնը, որ այնքան մաքրակենցաղ և արհամարհոտ գտնուած էր սկզբան հանդէպ Մայր-Եկեղեցիին, որ շատ կը տեսնէր միամիտ և հաւատաւոր պառաւին խաչելութեան առաջ մոմ վառելը, ջերմեռանդութեամբ պահք պահելը, խաչակնքելը, երկրպագելը և այլ և այլ նման անմեղ և անվնաս արարքները, որ կը ծաղրէր զանոնք որպէս նախապաշարեալներու, կռապաշտներու, ինքն ալ ո՛րպիսի անկումներու այլազանութեանց և տարօրինակութեանց ատակ եղած է, ու նոյն իսկ մերինին նման փոքր հասարակութեան մը մէջ անոնց նմանները ստեղծելու չափ առաջ գացած է։*

Դ.

*Մենք մատնանիշ ըրինք բողոքական գործունէութեանց մէջ վերջին տարիներս տեղի ունեցած փոփոխութիւնքը, արդիւնք կացութեան մը՝ սխալ ըմբռնումներէ և ընթացքէ ծնած՝ որուն սպառնական ծանրակշռութիւնը ոմանք անտեսել ուզած էին յամառօրէն, և որ սակայն յստակաբար ցոյց կուտար անդունդը, ուր կը գահավիժէր բողոքականութիւնը մեր մէջ։*

*Հայ Եկեղեցւոյ զաւակը ոչ լատինացած մըն էր և ոչ ալ Հայաստանեայց Եկեղեցին Պապական Եկեղեցի մը, յոռիութիւններու այդ նուիրական փարախը, որոնց դէմ բողոքականութիւնը հզօր ազդակ մը և դեղթափ մը կրնար ըլլալ։ Հայ Եկեղեցին,*

զոր անոնք «աւետարանական» ընելու ելած էին, շատ աւելի արմատական, ժողովրդական և լայնամիտ էր և մանաւանդ ընդունակ բարեկարգութեան, քան նոյն ինքն բողոքականութիւնը, որ անգոյն կը մնար անոր քովն ի վեր։

Բնականաբար խնդիրները այդ աստիճանին չպիտի հասնէին, եթէ բողոքական միսիոնարները մեր մէջ քրիստոնէութիւն քարոզելէ աւելի և առաջ՝ անգամ մը ուզէին քննել Հայաստանեայց Եկեղեցիին կանոնները, դաւանանքին հիմը, ոգին և ժողովրդեան հոգեբանութիւնը։

Ատիկա չըրին անոնք։ Աւելի ճիշտ՝ չափազանց անձնավստահ՝ չխորհեցան ընել։

Սխալ մըն էր ատիկա, տգիտութեան հոմանիշ, որ ապա արդիւնաւորապէս շահագործեցին հայ բողոքականութեան ազդեցիկ դասակարգի այն ներկայացուցիչները, որոնք մասնաւոր շահերու ակնկալութիւն մը ունէին բողոքականութեան մը գոյութեան մէջ և որոնց գործին կը յարմարէր մայր-համայնքին հետ անջատականութիւնը։

Հայաստանի մէջ գործող միսիոնարութիւնը, ենթակայ՝ հայաշունչ ազդեցութեան, աւելի շուտ ըմբռնեց այս կացութիւնը։ Վասպուրականի մէջ մանաւանդ համագործակցութեան գաղափարը ամենէն առաջ մարմին առաւ գործադրական հողի մը վրայ։

Վանայ դիրքը կրկնապէս թուլատու և նպաստաւոր էր այդ շարժումին։ Նախ՝ հայ տարրին գերազանցութիւնը կար և յետոյ մանաւանդ՝ Արարատեան-Միացեալ-Կեդրոնականի ջանքերուն տակ, Խրիմեան-Փորթուգալեան շունչին ներքև հասած նոր սերունդ մը իր ձեռքը առած էր Վասպուրականի և շրջակայից կրթական գործը, գէթ այդ կողմերը բողոքական կրթական հաստատութեանց շատ պէտք չէր թողուր։

Վանայ միսիոնարներէն գլխաւորը՝ դօքթ. Րէյնոլդս, որ առաջ հին սխալ դրութեան մէկ մարմնացումն էր—ինչ որ կերպով մըն ալ Վանայ մէջ բողոքականութեան յետամնացութեան գլխաւոր պատճառը եղաւ—և որ ժամանակին մր. Բարնըմին հետ նոյն իսկ կռիւ մը սկսեցին իրենց ընկերներէն մր. Սգարթին դէմ, որ ժողովրդական շարժումի մը նուիրուելու տկարութիւն ցուցած էր վանեցոց սորվեցնելով նուրբ կահագործութեան արհեստը՝ դաւանական վարդապետութենէ աւելի դրական օգտակարութիւն ունեցող բան մը ընծայելով երկրին, այսօր տարբեր ուղղութեան մը մէջ է։

Երբ մր. Բարնըմ Բայբըլ-Հաուզ փոխադրուած՝ երկար

տարիներէ ի վեր «Աւետաբերներու» խմբագրութիւնը կընէր Վանայ մէջ ուսած մաքուր հայերէնովը, դոքթ. Ռէյնոլդս դէպքերու և հանգամանքներու ազդեցութեան տակ դարձաւ և եղաւ մէկը Պօրտի այն առաքեալներէն, որոնք չպիտի մոռցուին մեր մէջ և որոնց այլևս բարերար գործունէութիւնը շուտով չպիտի մարի։

Անիկա, օրինակի համար, ոչ միայն թողուց իր հին մոլեռանդ բողոքականի վերաբերումը, այլ և նոյն իսկ թոյլատրեց, որ բողոքականները կարենան հայ եկեղեցին երթալ-գալ և արարողութեանց մասնակցիլ։ Իրենց կարգին լուսաւորչական հայերն ալ, քոլերայի տարի մը, չվարանեցան դոքթ. Ռէյնոլդս իրենց հրաւիրել, որ եկեղեցիներու բեմէն առողջապահական քարոզներ կարդար ժողովրդեան։

Հայամօտ այս շարժումին գլխաւոր և ամենակարևոր առաքեալը եղաւ սակայն Հերբերթ Ալէն, «Աւետաբերի» հանգուցեալ խմբագիրը (մեռած՝ 12/25 յունուար 1911-ին), որուն տխուր մահը, նոյն իսկ բողոքականներէն աւելի — ինչ որ դժընդակ և միանգամայն ուշագրաւ պարագայ մը եղաւ — զգացին և ողբացին լուսաւորչականները։

Հ. Ալէն, համանուն միսիոնարին զաւակը, ծնած Խարբերդի մէջ, մեծցած հայ հողի վրայ, սնած հայ հոգիով, իր գործունէութեան անդրանիկ շրջանը անցուց Վանայ մէջ, 1894—96-ի տենդոտ և արիւնոտ օրերուն, ուր ինքը, եանքի միսիոնար, իբր հայ ապրեցաւ մեր մէջ և այնպէս ալ գնահատուեցաւ։

Կառավարութեան ստիպմանց տակ երբ միս Քէմբլի և միս Ֆրէյզըրի հետ ստիպուեցաւ թողուլ Վասպուրականը, Միացեալ Նահանգաց մէջ — Բոսթոն — հիմնադիր եղաւ «Կոչնակին», որ ցայժմ կը հրատարակուի հոն և որու մէջ բուրող շունչը՝ օտար ըլլալէ հեռու՝ Վարագ և Գալիլիա կը յիշեցնէ, համակ հայենական։

Իր ջանքերը որքան դժուարին և իր գաղափարները դեռ ևս Ամերիկեան Պօրտի միջավայրին համար անժամանակ՝ սակայն կը թուի թէ գնահատուեցան այդ մարմինէն։ Ալէն անոր հրաւիրանաց վրայ կրկին Թիւրքիա վերադարձաւ և, մէկ երկու այլ պաշտօններէ վերջ, ստանձնեց երկլեզուեայ «Աւետաբերներուն» խմբագրապետութիւնը։

Այս նշանակալից յաջողութիւնը սկիզբ կը դառնար հուսկ ուրեմն իրականութեան ճամբու մէջ բերելու այն շարժումը, որ սկսած էր բողոքականութեան ծոցին մէջ և որ հակառակ խոչընդոտներու՝ սահմանուած չէ դադրելու։

«Աւետաբերներու» էջերը այլ ևս Հայաստանեայց Եկեղեցին անգոսնող, վիրաւորող գրութիւններով չխճողուեցան, և ընդհակառակն՝ Գուլզեաններու գրիչէն և սրտէն ելած՝ զայն փառաբանող և բարձրացնող յօդուածներ ճշմարիտ գայթակղական երևոյթ մը թուեցան կարգ մը մոլեռանդ բողոքական հայերու և անոնց պաշտպան բրածոյ միսիոնարներուն։

Եղաւ ատեն, որ անոնք չվարանեցան «Աւետաբերի» մէջ երևցած այդ կարգի «ամբարիշտ» յօդուածները թարգմանելով իբր անհերքելի ապացոյց նոր շարժումին մոլորածութեան Գօրտին ղրկել։

Եղան շատեր, որ ճշմարիտ և նոյն իսկ անձնական տգեղ և անուանարկիչ յարձակում մը սկսան հայամօտ միսիոնարին անձին և գործին շուրջը, իր իրեսին պոռալով որ Հայ Եկեղեցին փառաբանող իր այդ ընթացքովը ան «Աւետարանին գործը կը վտանգէր»։

Բայց Հ. Ալէն անսասան մնաց իր գաղափարներուն համամիտ և հաւատարիմ փոքրաթիւ գործակիցներու հետ ընդդէմ ստուար ընդդիմադիրներու և չքաշուեցաւ մղելէ ճշմարտութեան համար իր խաղաղ մարտը, որ կը կայանար այս նշանաբանին մէջ թէ՝ բողոքականութեան դերը այլ եւս չէր կրնար ըլլալ կռիւ մը եւ ատելութիւն մը Մայր-Եկեղեցիին դէմ, անկէ անջատումի եւ բաժանման ճիգով մը, այլ անկեղծ սիրտով մը անոր մերձեցումը, անոր հետ եւ անոր մէջ միայն եկեղեցական բարեշրջութեան բաղձացուած գործը ըստ կարի փութացնելու համար։

Ալէն արդարև, իբր երկրին զաւակ, անոր մէջ մեծցած, իր անձին վրայ մարմնաւորելով հայու մը կատարելութիւնները եանքիի արեան և խառնուածքին, կրցած էր աւելի լաւ իմ- դատել և որոնել բողոքականութեանը մեր մէջ չյաջողուելուն իսկական պատճառները։

Կրցած էր հասու ըլլալ, որ բողոքականութեան դերը, իբր կրօնատարածի՝ շատ հին և մաքրակենցաղ Եկեղեցի մը ունեցող քրիստոնեայ ժողովրդի մը մէջ, անօգուտ կորսուած և մանաւանդ վնասակարօրէն գործածուած ժամանակ մըն էր։ Ուստի ջանաց տարածել այն գաղափարը, թէ ան ըլլալու էր յետայսու համերաշխական սիրոյ սկզբունքներով՝ ազգին բարոյական, կրօնական և կրթական մակերևոյթին բարձրացման ազդակներէն մէկը։

«Աւետաբերը» այս ոգիով շարունակեց մինչև իր տարաժամ մահը։ Մինչ անդին ընդդիմադիր հզօր դպրոցը և ղեկավարները նոյնպէս զգալով իրենց անձնական շահերուն և ազդե-

ցութեան տեսակէտէն յառաջ գալիք վտանգը—որոնց դիրքին պահպանութիւնը հայութեան սիրտին վրայ բացուած ծանր պատռուածքը կրնար ապահովել—սկսած էին պայքարը խուլ և կատաղի, յայտնի և անյայտ ամէն միջոցներով, որոնց խորը մտնելը սակայն մեր նիւթէն դուրս կը մնայ։

Այս հակաշարժումը՝ կառավարուած հայ պատուելիներէ՝ իր ոյժը և նեցուկը կը գտնէր նաև Բայբլ-Հաուզ մոռցուած կարգ մը ժամանակնին անցուցած միսիոնարներէ, որոնք ևս ցաւօք կը տեսնէին իրենց բաժանման և աւերի գործին կանգ առնուլը, վերաշինումի գաղափարին յառաջդիմութեան մէջ խեղդուած։ Ատոնցմէ էին, օր. համար, դոքթ. Հերիք, մր. Բարնըմ և դոքթ. Կրին, որոնք կամբաստանէին Ալէն, թէ «ան Աստուծոյ գործը կը խափանէ»։

Ալէն նոյնպէս միայնակ չէր։ Սակաւաթիւ իրաւ՝ բայց գիտակից հայ և միսիոնարական ոյժ մը իրեն համակիր և բարեկամ ունէր։ Այսպէս, օրինակի համար, մր. Փիթ, միսիոնարական գործին նախագահը Կ. Պոլիս, Շմաւոնեան եղբարք, մր. Րէյնոլդս (Վան), Մր. Ջէմբըս (Պարտիզակ), մր. Մաքալէմ (Մարաշ) և այլն և այլն։

Մէկ անգամ այս ճամբու մէջ Ալէն չվարանեցաւ բարեկարգութեան ձեռնարկել նաև Բայբլ-Հաուզին վարչութիւնը, ուր տեղաւորուած Պօրտի հարստութիւնը և ներողամտութիւնը շահագործող միսիոնարական խումբ մը՝ ահագին ծախքերու ենթարկած էր Պօրտը անօգուտ այնպիսի մսխումներով, որոնք ոչինչ օգուտ չէին առաջացուցած գործին տեսակէտով, քան եթէ զայն վարկաբեկել։

Յիշենք՝ այսպէս՝ Պօրտին տպագրական ճիւղը։ Քննութեամբ պարզուած է, որ 7—8000 ոսկիի գիրքերու տրցակներ կան, տըպագրուած այլ և այլ առիթներով՝ Պօրտի աչքին փոշի փչելու և գործունէութիւն ցոյց տալու մտքով, և որոնք, հակառակ ձրի ըլլալու չափ իրենց աժանութեան, գնորդ չգտնելով մնացած էին մքլոտած՝ Բայբլ-Հաուզի անկիւններուն մէջ։

Եւ սակայն 7—8000 ոսկիով ինչե՜ր կարելի չէր տպագրել—բարոյական, մտաւորական, գիտական և տնտեսական—հայ գըրական աղքատ մատենադարանը հարստացնելու համար։ Գործ մը անհամեմատ աւելի օգտակար, դրական և վայելուչ՝ միսիոնարական մարմնոյն։

Այս մասին վերջին ժամանակներուս պետը՝ դոքթ. Հերիքը ետ կանչուելով, իր տեղը հրաւիրուած է Մարաշի միսիոնար մր. Մաքալէմը, աւելը ձեռք՝ աւլելու, այրելու և մաքրելու

Բայբլ-Հաուզն այդ փոշեծրարներէն, որ սակայն, ինչպէս ըսինք, հազարաւոր ոսկիներու գումար մը արժած է ազգին և Պորտի միսիօնարական գործին։

Ե.

Բայց որպէս զի որոշ գաղափար մը տանք ալէնական լուսամիտ դպրոցին և հետևորդներուն վերաբերումին դէպի մայրհամայնքը և Եկեղեցին, չյիշելով Խաչատուր Գուլզեանի և այլոց՝ հայ տօներու, ծէսերու և նշանակութեան մասին «Աւետաբերի» մէջ հրատարակուած բազմաթիւ յօդուածները, որոնք ճշմարիտ խրախուսանք մը առաջացուցին բողոքական այդ պաշտպանողական շարքերուն մէջ և խնդիրը, քանիցս, մինչև Պորտին հասուցին, մենք հոս քաղուածքներ միայն մէջ պիտի բերենք վաղամեռիկ միսիօնարին մէկ գրուածքէն, որուն վերնագիրն է՝ նոյնքան «մոլորական»՝ «Հայաստանեայց Առաքելական Սուրբ Եկեղեցի», որ հրատարակուեցաւ 1910-ի Թէոդիկի ծանօթ «Տարեցոյցին» մէջ և այնքան ջերմ գնահատութեան արժանացաւ։

Ահա հատուածներ այդ գրուածքէն։

«Իբր տասն-ութ տարի առաջ սկսայ ջերմապէս համակրիլ Հայոց ազգային Եկեղեցիին։ Այս համակրութիւնը հետըզհետէ խորին յարգանքի փոխուեցաւ Քրիստոսի Եկեղեցիին կենդանի ամենէն հին այս ճիւղին հանդէպ։

«Իմ նախահայրերս Նոր Անգլիոյ պանդուխտ հայրերն են։ Եկեղեցին՝ ուր իմ կրօնական հրահանգութիւնս ստացայ՝ այն է, զոր անոնք հաստատեցին բողոքելով այն ժամանակի բռնապետական Անգլիքան Եկեղեցիին դէմ։ Մեծ սկզբունքը, որու համար տուն ու երկիր յօժարակամ թողուցին և անապատի սարսափներն ու դժնդակ տառապանքները յանձն առին, խղճի բացարձակ ազատութիւնն էր հոգևոր բաներու մէջ։ Անոնք առաջնորդները եղան շարժման մը, որ 300 տարի անընդհատ յառաջացաւ և ընդարձակ ազդեցութիւն գործեց ոչ միայն Ընդհանրական Եկեղեցիին վրայ, այլ և աշխարհի քրիստոնեայ ազգերուն քաղաքական կեանքին վրայ։ Ուստի բնական է ինծի հաւատարիմ մնալ մարմնի մը, որ այնքան մեծ բաժին ունեցած է ազատութեան տիեզերական մարտին մէջ։ Բաց աստի, Նոր Անգլիոյ ժողովականի մը համար աւագ կարևորութիւն ունի սա սկզբունքը, թէ հոգին՝ առանց քահանայական միջնորդութեան՝ ուղղակի Աստուծոյ պատասխանատու է, մինչ արարո-

ղութեան ծայրայեղ պարզութիւնը կամ նոյն իսկ բացակայութիւնը անոր ճաշակին աւելի կը յարմարի, քան պետական Եկեղեցիներու փառահեղ ծէսերը և արարողութիւնները։ Այս խոստովանութիւնը կընեմ նախ՝ որպէս զի ցուցնեմ, թէ Եկեղեցին ինչ տպաւորութիւն ըրած է իմ վրաս իբրև օտարի մը վրայ, և երկրորդ՝ որպէս զի բացատրեմ պատճառներէն մէկ քանին, որոնց համար հետզհետէ աւելի կը համակրիմ Հայաստանեայց Եկեղեցիին։

«Այս Եկեղեցիին թէ պատմական զարգացման, թէ արդի վիճակին վրայ իմ անձնական ծանօթութիւնս կատարեալ ըլլալէ շատ հեռու է։ Բայց որքան կուսումնասիրեմ զայն, այնքան կը տպաւորուիմ աշխարհի հաստատեալ Եկեղեցիներուն մէջ անոր բացարձակ եզականութենէն և թաքուն կարելիութիւններէն։ Եկեղեցին, կրօնական ամեն կազմակերպութիւններու նման, իր սխալներն ունեցած է»։

Եւ ապա թուելով Հայ Եկեղեցւոյ ժամանակին գործած սխալները, գլխաւորը կը նկատէ Պաւղիկեաններուն դէմ հալածանքը, որոնք Հայաստանէն փախչելով այլուր՝ Հարաւային Ափրիկէ և մինչև Եւրոպա՝ տարին ազատ հաւատքին դաւանանքը։

«Անգլիոյ և Ամերիկայի մաքրակրօն շարժման արդի պատմիչները Հայաստանի բարձրագաւառներէն եկող աղօթքի այս մարդոց կը վերագրեն անոր սկզբնաւորումը։ Օր պիտի գայ, երբ հայերը պիտի պանծան, թէ Եւրոպայի կրօնական ազատութեան առաջին ռահահորդները Եփրատի ակերուն մօտ և Հայաստանեայց Եկեղեցիին ծոցին մէջ ծնան։ Կարելի չէ հետեւապէս չզգալ, թէ Պաւղիկեաններուն վտարումը Հայաստանի համար նոյնչափ ծանր սխալ եղաւ, որչափ Ֆրանսայի համար արտաքսումը Հիւգընօններուն, որոնք այն ժամանակ իր զաւակներուն ամենէն յառաջադէմները կը ներկայացնէին»։

Երկրորդ մեծ սխալը Ռուբինեանց ատեն,—կը մատնանշէ Հ. Ալէն,—Ունիթոռներուն վարդապետութեանց, աւելորդ ծէսերուն և ձևականութեանց մեր մէջ ներմուծումը եղաւ քաղաքական պատճառներով։

«Ուրիշ սխալ մը, որու նկատմամբ կարծիքի անհամաձայնութիւն գրեթէ չկայ, սա է, թէ Ռուբինեանց թագաւորութեան շրջանին մէջ Եկեղեցիին թոյլ տրուեցաւ շատ բան կորսնցնել իր նախնական պարզութենէն։ Ժողովուրդը առհասարակ արիաբար ընդդիմացաւ Հռոմայ ոտնձգութիւններուն։ Հակառակ ամեն ճիգերու, մեծ անձնատուութիւն մը չեղաւ պապական գլու-

խին։ Ի վերջոյ՝ քաղաքական ամէն իշխանութիւն կորսուեցաւ և հայոց թագաւորութիւնն առ յաւէտ ինկաւ, սակայն Եկեղեցին պահեց իր դաւանանքի և կազմակերպութեան անկախութիւնը։ Այսու ամենայնիւ, վեհապետներու և եկեղեցական իշխանութիւններու շահախնդրական փառամոլութիւններուն պատճառով, հռոմէական ձեռնձգութիւններու դրոշմները մնացին։ Եկեղեցին, որ իր անկախութիւնը այնքան փառաւորապէս պահպանած էր հազար տարի, տակաւ բեռնաւորուեցաւ իր աւանդական սովորութիւններուն և բնազդային կրօնական համոզումներուն բոլորովին օտար ծէսերով ու արարողութիւններով»։

Եւ ապա, մեր մէջ, բողոքականաց մայր-համայնքէն անջատումին գալով, այսպէս կը գրէ.

«Գալով 1846-ի բաժանման, երբ Աւետարանական Եկեղեցի մը կազմուեցաւ, դէթ կրնայ սաչափ ըսուիլ, թէ Հռոմի ձեռքը դարձեալ երևցաւ։ Հալածանքի դիմում եղաւ և խորին հաւատոյ տէր և իրենց հայրերուն Եկեղեցիին անկեղծօրէն հաւատարիմ մարդիկ բաւական պատճառ ունեցան զատուելու և ուրոյն Եկեղեցի մը կազմելու։ Անօգուտ է երևակայել փորձել, թէ արդեօք ելքը ինչ պիտի ըլլար, եթէ միսիօնարները չշեղէին իրենց սկզբնական խորհուրդէն, որ էր՝ գտնուած եկեղեցական կազմակերպութիւններուն չխառնուիլ, և բոլոր աւետարանամիտներուն յորդոր ուղղէին իրենց եկեղեցային կապերը չխզել, այլ յարատև ու եռանդուն հաւատարմութեամբ Եկեղեցիին ծառայել։ Եղածը եղած է, չի կրնար եղծուիլ։ Բաց աստի, ներկայ շրջանի մարդիկս մեր նախորդներուն արարքներուն վրայ բացարձակ վճիռ արձակելու դիրքի մէջ չենք։ Թէ բարերար արդիւնքը շատ աւելի մեծ պիտի ըլլար՝ չենք գիտեր։ Սակայն պարտական ենք խոստովանիլ, թէ Թուրքիոյ աւետարանական շարժումը և անոր յարակից կրթական գործը շատ մեծ բարիք եղան ոչ միայն հայոց, այլ և բովանդակ երկրին»։

Եւ ապա Հէրբէրթ Ալէն «Հայաստանեայց առաքելական ս. Եկեղեցիին» բուն նիւթին անցնելով՝ անոր մասին իր մտածմունքը, հիացումը կարտայայտէ այնպիսի բուռն շեշտերով և անկեղծ զգացմամբ մը, որ մենք օգտակար կը համարինք նոյնութեամբ մէջ բերել, և որ ինքնին բաւական կը լուսաբանէ իր հակառակորդ ոյժերուն սերտմտութիւնը՝ «Աւետարանին գործը քանդող» այս անօրէն միսիօնարին հանդէպ։

«Այս նախաշաւիղ դիտողութիւնները սակայն բուն Եկեղեցիին չեն վերաբերիր բնաւ։ Ընտիր նաւ մը անգամ կրնայ

իր ընթացքէն խոտորիլ տգէտ ղեկավարներու ձեռամբ, կամ կրնայ իր ճամբուն մէջ յապաղիլ՝ յատակին կառչող օտար նիւթերու պատճառով։ Հայաստանեայց պատկառելի Եկեղեցին ինչ շեղումներ ալ ըրած և բնականոն ու սկզբնական իր պարզութեան վերադարձուելու համար ինչ բաներու ալ կարօտ ըլլայ, կրօնական բովանդակ պատմութեան մէջ չկայ բան մը, որ անոր չափ ուժգին ազդէ երևակայութեանս և խանդավառէ զիս համակ։ Պատճառը անոր հնութիւնը չէ սոսկ։ Հաստատութիւն մը կրնայ պատկառելի ըլլալ և սակայն ոչ շահեկան։ Պատճառը անոր կազմութիւնն ալ չէ, թէև ուշագրաւ ու հոյակապ է այդ։ Պատճառը սա է մանաւանդ, որ այս Եկեղեցին ամեն ուրիշէ աւելի ազգի մը հոգիին մարմնացումը կը ներկայացնէ աշխարհի վրայ։ Թանձր այն խաւին տակ, զոր տգիտութեան ու նախապաշարման դարեր անոր շուրջը գոյացուցած են իր գեղեցկութիւնը եղծանելու և կենսաւէտութիւնը չքացնելու համար, անմահ կեանքի մը կենդանի հոգին կը բաբախէ տակաւին։ Ծաւարի ջոլիրներուն դէմ Քրիստոսի սուրբ անուամբ մերթ պայքարող, մերթ անպատմելի հալածանքի տակ յօշոտուող և արիւնող և մերթ խաղաղ օրերու մէջ քրիստոնէական հաւատքի յաղթական օրհներգները եղանակող, միշտ կենդանի, միշտ հաւատարիմ և յաւիտեան յուսալից այդ հոգիին տեսիլն է, որ կը հրահրէ և կը բոցավառէ քրիստոնեայ հաւատացեալին երևակայութիւնը և կրօնական ջերմեռանդութիւնը։ Հայ ազգութեան այս հոգիին ազդեցութիւնը ոչ մէկ ժամանակ աւելի խորապէս զգացած եմ, քան երբ կը կանգնէի հեռաւոր Հայաստանի լեռն հովտի մը վաղեմի մէկ վանքին շրջափակին մէջ։ Ո՜հ, ինչ պերճախօս լռութիւն էր այն։ Եւ յետոյ մէն մի գիւղի, աւանի և քաղաքի քարուկիր ամուր եկեղեցին, ղօղանջող զանգակը, աղօթքի և պաշտօնի անվրէպ ժամերը, մշտաբաց դուռը—ամբողջ 16 դար—ինչե՜ր, ինչե՜ր կը յայտնեն այն ոգիին նկատմամբ, զոր ոչ հուրը, ոչ սուրը և ժամանակը կրցած է մարել։ Երբ այսպիսի մտածումներու մէջ թաղուած կը կանգնիմ ես հայկական տաճարի մը մէջ, փոյթ չէ՝ որչափ ալ անփառունակ ըլլայ այն, և կունկնդրեմ աւետարանի ընթերցման, կամ պատմական շարականներու վեհ եղանակներուն, կամ հոգեշունչ աղօթքի մը մատուցման, խորապէս կը յուզուի սիրտս։ Հայ մը ի՞նչպէս կրնայ անտարբեր կենալ ազգին այս մայր ոգիին առջև, ի զուր ջանացած եմ հասկնալ։ Պիտի մեղադրուի՞մ արդեօք, եթէ ես, օտարական մը, ազդարարութիւն մը ընեմ։ Եկեղեցիին պաշտպան այս գեղեցիկ ոգին բազում դարերու փոթորիկներուն

կուրծք տուած է, բայց հիմա կարծես վտանգի մէջ կը գտնուի ներքուստ։ Եւրոպայի ժանտախտի վայրերուն թունաւոր, ախտաւոր մթնոլորտը շնչած մարդիկ սկսած են անոր սուրբ գաւիթները վարակել կործանիչ վարդապետութիւններով։ Երկրին ամեն կողմերէն նոյն պատմութիւնը կուգայ։ Երիտասարդներ և, ամենէն ցաւալին, երիտասարդուհիներ ալ հաւատալ կը կեղծեն, թէ Եկեղեցին այլ ևս կարևորութիւն չունի։ Ասոնցմէ ոմանք բացարձակ խառնակեացներ են, ոմանք չքոտի փիլիսոփայութիւններու փառամոլիկ ներածիչներ, ոմանք ալ լրջամիտ պարկեշտ մարդիկ, որոնք իրենց աչքերուն առջև ունենալով Եկեղեցիին կամ կրօնի խոշոր թերութիւնները՝ չեն կրցած տեսնել ազգային հոգիին տեսիլը։ Մինչև հոս ջանացի ցոյց տալ, թէ ինչու Հայաստանեայց Եկեղեցին կազդէ իմ երևակայութեանս և թէ ինչու կը ստիպուիմ ըսել, թէ բարեբախտ են այն հայերը, որոնք իրենց հոգևոր ժառանգութեան թանկագին յարգը կը զգան։

«Կուզեմ յիշել քանի մը բաներ, որոնց պատճառով կը խանդավառուիմ ես Եկեղեցիին ապագային համար։ 1) Ուղղափառ է այն։ Ամուր կը մնայ Նիկիական մեծ Հանգանակի վրայ և միշտ այդպէս մնացած է։ 2) Չեմ գտած դեռ բան մը, որ անյաղթելի արգելք ըլլայ անոր օրէնքներէն և վարդապետութիւններէն ոմանց վերաքննութեան, երբ այս անհրաժեշտ դառնայ։ 3) Անոր ծէսերը կրնան, կըսուի, վերին աստիճան բարեփոխուիլ ու կրճատուիլ արդի հայերու լուսաւորեալ ճաշակին յարմարելու համար, Եկեղեցին էականապէս անփոփոխ թողլով իր հիմնական հանգամանքներուն մէջ, բայց միևնոյն ժամանակ զօրացնելով զայն իբրև ազգին կրօնական կեանքին սատարող արդի հաստատութիւն մը։ 4) Սկիզբէն ի վեր ռամկավարական և ազատասէր եղած է իր վարչային դրութեամբ։ Այս իրողութիւնն է որ պատմութեան հրաշալիքներէն մին կը դարձնէ Հայաստանեայց Եկեղեցին։ Եթէ ոևէ մէկը հետաքրքրի գիտնալ, թէ ինչու հայերը անկախ ու ինքնավար ըլլալու հակում ունին, և ուզէ հասկնալ, թէ ինչու Արևելքի եռանդուն և յառաջադէմ ժողովուրդն եղած են միշտ, գաղտնիքը պիտի գտնուի ինքնավարութեան հրահանգութեան մէջ, զոր Եկեղեցին կաւանդէ անոնց դարերէ ի վեր։ 5) Յոյսի հաստատագոյն կռուաններէն մին այն մարդիկն են, որոնք, ազգային թէ աւետարանական, ազգին ոսկորն ու ջիղը կը կազմեն և արդէն իսկ սկսած են հայ ժողովրդին հոգևոր արթնութեան գործը վարել։

«Ապահով է ըսել, թէ Եկեղեցիին բարեկարգութեան խըն-

դիրը մեծ տեղ կը գրաւէ հայերու մտքին մէջ։ Կակնկալուի, թէ ընդհուպ գործնական քայլեր պիտի առնուին այս ուղղութեամբ։ Միեւնոյն ժամանակ դիտել պէտք է, թէ պատրաստութեան կարեւոր գործը յառաջ կը տարուի առ նուազն 80 տարիէ, Փէշտիմալճեանի օրերէն ի վեր։ Եկեղեցային բարեկարգութեան ժողովրդային գաղափարը սա կը թուի.—Աւելորդ բաները ջնջել և պաշտօնապէս վերադառնալ սկզբնական այն պարզութեան, ուր Եկեղեցին կը գտնուէր, երբ կազմուեցաւ Լուսաւորչի ձեռամբ։ Իմ համոզումս է, թէ այդ մէթոդը գործնական չէ, և եթէ գործնական իսկ ըլլար, արդիւնաւոր պիտի չըլլար։ Եկամուտ անպէտ բաներ ջնջել և ոչ միայն երրորդ դարու, այլ բուն իսկ պարզ Աւետարանի առաքութեան ու մաքրութեան վերադառնալ շատ կարեւոր է արդարեւ։ Սակայն այս պիտի ըլլայ բարեկարգութեան պտուղը և ոչ գործողութիւնը։ Առաջ ձեւափոխումը, շքեղէն պարզուկի վերածումը՝ ինքնին երաշխաւորութիւն մը չէ կենսական և միայուն բարեկարգութեան։ Դարձեալ՝ շատ անգամ կըսուի, թէ Եկեղեցիին ամենէն մեծ պէտքն է հոգևոր հուր մը, որ նախ կղերին շրթանց ու հոգիներուն դպչի և յետոյ ժողովրդին մէջ տարածուի։ Այս աւելի կը մօտեցնէ մեզ բարեկարգութեան գաղտնիքին։ Սակայն հոս ալ խնդիրը մը կը ցցուի մեր առջև։ Ի՞նչպէս յառաջ պիտի բերուի այս ամենաբաղձալի արթնութիւնը։

«Տարիներով ուսումնասիրելէ վերջ միայն մէկ բառ գտած եմ այս հարցին իբրև բանալի։

«Ընդարձակում։ Խոշոր տառով կը գրեմ զայս, որպէս զի ամեն միտք ի նկատ առնէ և իր ոճով որոճայ անոր վրայ։ Նախամեծար կը համարիմ ընթերցողներուս և բարեկամներուս իբրև խորհուրդի սերմ ներկայացնել զայն և ոսէ յատակագիծ ուրուագրելու կամ մանրամասնօրէն պատրաստելու փորձ չընել։ Արդարև ես զիս այդպիսի գործի ըստ բաւականին ատակ ու պատրաստ չեմ նկատեր։ Այսու ամենայնիւ քանի մը դիտողութիւն անհրաժեշտ է ընել՝ դիրքս բացատրելու համար։

«Հայաստանեայց Եկեղեցիին արմատական գաղափարն է իր թեւերուն մխիթարար ջերմութիւնը և հովանին տարածել ամենուն վրայ, որոնք հայ ծնած են։ Հայաստանեայց Եկեղեցիին նկատմամբ այս աւելի ճշմարիտ է, քան աշխարհի ուրիշ ոևէ ազգային Եկեղեցիի նկատմամբ։ Եւ խոստովանելու ենք, թէ այս գաղափարականն առ հասարակ լաւ պահպանուած է։ Ամեն քրիստոնեաներու հանդէպ թոյլտուութիւնն ալ ուրիշ մէկ որոշ յատկութիւնն է Հայաստանեայց Եկեղեցիին։ Եւ սակայն ա-

ռաքեալներուն օրով հիմնուած քրիստոնեայ այս մեծ Եկեղեցին իր մէջ ըստ երևոյթին չունի տեղ Հայաստանի ամենէն ջերմեռանդ ու հայրենասէր զաւակներէն ոմանց համար։ Թերևս աւելի ճիշտ պիտի ըլլար ըսել, թէ չկայ տեղ այն վարդապետութիւններուն և գործերուն համար, զորոնք այս վերջինները էական կը համարին քրիստոնէական կեանքին համար։ Չեմ փորձեր խօսիլ մեր հայ կաթոլիկ եղբայրներուն վրայ, վասն զի չեմ հասկնար, թէ ինչ շարժառիթով Էջմիածնէ Հռոմ փոխադրեցին իրենց Եկեղեցին, հպատակութիւնը և հաւատարմութիւնը։ Դարուս այս առաջին քառորդին կամ երկրորդին մէջ՝ հայ աւետարանականները կրնան կամ չեն կրնար Մայրենի Եկեղեցիին ծոցը վերադառնալ։ Այս խնդիրն ինքնին քիչ կարևորութիւն ունի բաղդատաբար։ Բայց այս պատկառելի Եկեղեցիին համար անհագին կարևորութիւն ունի որոշել, թէ ազգին այն զաւակները, որոնք խղճի կատարեալ ազատութիւն կը խնդրեն վարդապետական և ծիսական հարցերու մէջ, իրենց հայրերուն Եկեղեցիին մէ՞ջ պիտի մնան թէ՞ այն Եկեղեցիէն դուրս, որ Քրիստոսով հիմնուեցաւ և կրկին ու կրկին մարտիրոսներու արեամբ լուացուեցաւ։ Ահաւասիկ Եկեղեցիին համար սքանչելի պատեհութիւն մը բովանդակ աշխարհի ապացուցանելու, թէ Հայաստանեայց Եկեղեցին, հնագոյնը որ կայ, ճշմարիտ ազգային Եկեղեցի է, թէ անոր ընդարձակ ծոցին մէջ ազգին մէն մի զաւակը կարող է սնունդ և պատսպարութիւն գտնել և թէ Քրիստոսով իրական միութիւնը ոչ ևս է չիրականացած գաղափարական։

«Ընդարձակում է նշանաբանը։ Թող ո՛չ ոք, Ազգային թէ Աւետարանական, զոհէ ոևէ բան զոր կենսական կը համարի։ Թող չըլլայ բանակցութիւն, որ կրնայ վէճերու առիթ ընծայել կամ լայն դուռ բանալ վարդապետական հակաճառութիւններու։ Թող միայն տեղ բացուի ամբողջ ազգին։ Երկարեցէք վրանին չուանները, աւելի՛ հեռացուցէք ցիցերը, որպէս զի Քրիստոսի ամեն հետևող կարենայ զգալ, թէ կը գտնուի այն պատսպարանին մէջ, որ տասն-ութ դարու պայքարներով ու զոհողութիւններով է պահուած, պահպանուած։ Բարեկարգութիւն սկսելու է ընդարձակումով, որ կատարեալ արտայայտութիւն պիտի ըլլայ Հայաստանեայց Եկեղեցւոյն ոգւոյն։

«Հ. Մ. ԱԼԷՆ»

Պարզ կը տեսնուի, թէ Հ. Ալէն ինչպէս կըմբռնէր Հայ Եկեղեցին իր պարզ և մաքուր գաղափարականին մէջ, որու հա-

մաձայն կրօնական ուրոյն հատուածներու գոյութիւնը աւելորդ կը դառնար։

Ակնարկելով այդ կէտին և հայերուն իրենց Եկեղեցիին կապուած մնալու գաղափարին «Հայաստանեայց Եկեղեցւոյ նկատմամբ այս աւելի ճշմարիտ է, քան աշխարհի ուրիշ ոևէ ազգային Եկեղեցիի նկատմամբ» խօսքովը ան չե՞ր դատապարտեր անջատական ոևէ գաղափար հանդէպ Եկեղեցւոյ մը, որ «ուղղափառ է», ազատ իր վարչական դրութեամբ, բան մը, որ «պատմական հրաշալիքներէն մէկը կը դարձնէ Հայաստանեայց Եկեղեցին» և այլն։

Այս տողերուն բովանդակ զօրութիւնը աչքէ չի վրիպիր, այնքան որ յստակ է և յատկանշական՝ Հայ-Աւետարանական Եկեղեցին առաջնորդելու կոչուած ականաւոր միսիօնարի մը բերնին մէջ։

Պարագայ մը, որ նոյն չափով ալ դժգոհութիւններ և դիմադրութիւն ծնեցնելու պատճառ պիտի տար, ոչ միայն արտայայտուած այդ վտանգաւոր գաղափարաց դէմ, այլ և անկէ ծնած և մարմին առնող նոր հոսանքին դէմ—սիստեմատիք ուժով կռիւ մը—«հայ-չարիքը» դարմանելու համար։

## Զ.

Ըսինք արդէն, որ եթէ այս՝ կարգ մը հին և անգործ միսիօնարներու ապարդիւն և օդի մէջ կառուցած դղեակները և ծրագիրները կը քանդէր՝ անոնց բովանդակ ոչնչութիւնը երեւան բերելով, անդին հայ-բողոքականաց մէջ ևս՝ դիրք և տեղ բռնած պատուելիական դասակարգ մը ալէնական այս համերաշխութեան գաղափարներու տարածումէն վտանգ մը կը նշմարէր, ինչ որ պիտի ըլլար դատապարտութիւն և աւելորդութիւն իրենց գործունէութեան՝ այլ ևս աննպատակ։

Այս հակընդդէմ ոյժը, որուն օրրան էր Կիլիկիա և Կիլիկիոյ մէջ ևս Այնթապ, անտարբեր չմնաց այս երևոյթներուն և մանաւանդ մինակ ալ չգտնուեցաւ։

Կիլիկիոյ մէջ գործածական լեզուն Թիւրքերէնն ըլլալով, միսիօնարներն ևս բնականաբար հօն այդ լեզուն սորվելու միայն ջանադիր են։

Ատոնք այդպէս ըլլալով հայ-բողոքականներն ևս իրենց ամէն բանը, ուսուցումը, քարոզը հօն այդ լեզուով ընելով՝ ի-

րենց հակակրութիւնը և անտարբերութիւնը ազգային լեզուին դէմ, կամայ ակամայ, մասնաւոր և ուշագրաւ աստիճանի մը հասած է։ Ապա թէ ոչ իրենց կրթական և նպաստաւորուած բազմաթիւ հաստատութիւններովը՝ անոնց բնաւ դժուար պիտի չըլլար հայ լեզուն Կիլիկիոյ հայութեանը սորվեցնելու։

Բայց այս չկամութիւնը առանց պատճառի չէ։

Միսիոնարները, հին, անգէտ պահուելով և մնալով հայ լեզուին—որով ընդհանրապէս միայն կարտայայտուին հայ միտքը, գաղափարները, մամուլը և գրականութիւնը, անով են Հայ Եկեղեցիին զանազան գրութիւնները և մատենագրութիւնը, ադով է որ կըլլան հայ եկեղեցական արարողութիւնքը, քարոզները և այլն և այլն—այդ եղանակաւ կարելի եղած է այդ միսիոնարները ըստ կարի հեռու պահել հայ կեանքին և Եկեղեցիին նկատմամբ մօտիկ ուսումնասիրութիւններէ, որ պիտի կրնային զանոնք ևս հասցնել այն գաղափարներուն, որոնց հասած էին՝ լոկ հայ միջավայրին ազդեցութեամբը՝ Ալէն և Նըմանները։

Մինչ թիւրքերէն լեզուի պարագային իրենք միայն պիտի ըլլային Հայ Եկեղեցւոյ և այլն նկատմամբ այդ միսիոնարաց առաջնորդը և ներշնչիչները, որոնք սխալ գաղափարներով սընած՝ բնական է որ սխալ գործունէութեամբ մը ևս առաջնորդէին իրենց յանձնուած հսկայ գործը։

Հայերէնի գիտութեամբը հայ բարքերուն աւելի սերտիւ ծանօթութեան ազդեցութիւնը բացորոշապէս ակներև եղած է հայկական գաւառաց մէջ աշխատող միսիոնարութեանը վրայ։ Այն մէկ քանի ականաւոր և լուսամիտ դէմքերը, որ մեր մէջ Պօրտի առաքելութեան փառքերը և պատիւը կը կազմեն, ապրած և գործած են Հայաստանի մէջ, բնիկ հայախօս հայ տարրին հետ, գիտնալով անոր լեզուն, հետաքրքրուելով անոր ցաւերուն, ճանչնալով անոր հոգեբանութիւնը և ձգտումները, պատմութիւնը և այլն և այլն։

Ահա թէ ինչպէս բողոքականաց պահպանողական այս դպրոցը և անոր գլխաւոր վարիչ ոյժը ամրացած է Կիլիկիոյ մէջ, և ինչ որ աւելի ուշագրաւ է՝ Կիլիկիոյ մտաւոր կեդրոններէն Այնթապի մէջ, ուր անոնք ունին հսկայ հաստատութիւններ և բազմաթիւ հետևորդներ և ուրկէ կը կառավարեն զանոնք այնպիսի ներշնչումներով, ուր թերևս օր մը նոր հերձուածներու պատճառ դառնան մեր բողոքական եղբարց մէջ։ Զի եթէ ոչ քանակով, գէթ որակով՝ կարևոր մէկ մաս մը այլ ևս գիտակցօրէն և անդառնալիօրէն որոշած է չշեղիլ այն ու-

դէղ վարդապետութենքն, որ նոր դպրոցին ներշնչման ներքև ծնած է իրենց մէջ, և որ աւելի համապատասխան կը գտնեն իրեն տոհմային ընդհանուր ձգտումներուն։

Ինչ որ ալ ըլլայ ուրեմն, համարձակ կարելի է ըսել, թէ բողոքականութեան երևումը՝ կրօնական նեղ ըմբռնումներէ դուրս Հայաստանի կողմերը որքան որ եղած է օգտակար և անգլօ-ամերիկեան քաղաքակրթութեան մեր մէջ ներմուծումին գլխաւոր և դիւրամատչելի ազդակը, Կիլիկիոյ մէջ ընդհակառակն՝ օգուտի և վնասուց համեմատութիւնը պահպանելով հանդերձ՝ իր ազդեցութիւնը տոհմային կատարելութեան տեսակէտով եղած է բացասական։

Ինձ առիթ եղած է տեսնել ուսուցիչներ՝ հայ բողոքականներէ, որոնք Անգլիա կամ Ամերիկա ուսած են և տարիներէ ի վեր կը դասախօսեն կիլիկեան հայ-բողոքական վարժարանաց մէջ, քաջ կը խօսին թիւրքերէնէ զատ և անգլիերէն, սակայն... հայերէն բառ մը խօսիլ չգիտեն։

Մարաշի, Այնթապի, Հաջընի և այլն գերման, ամերիկեան և անգլիական որբանոցաց որբերը—երկսեռ—մեծ մասամբ հայախօս սկզբան, իրենց մայրենի լեզուն մոռցած են այժմ։ Եւ երբ անոնց մէկ քանիներու հայ բողոքական պաշտօնէից դիտողութիւն կընէինք՝

—Է՛հ, քաղաքականութիւնը այս կը պահանջէ,—կըսէին, —և ուրիշ կերպ հնար չէ... (?)։

Արդարև։ Օտարներու ձեռք և... այդպէս հայերու միջոցաւ։

Անցեալ տարի, երբ դպրոցական շրջանի վերջերը Հաջըն կը գտնուէի, հրաւիրուեցանք աղջկանց «Ակադեմիայի» տարեկան հանդիսին, ուր ընթացաւարտներ ալ կային։

Քանի մը ժամ տևող այդ հանդիսին մէջ ձառ մը—գրաւոր—միայն լսեցինք հայերէն, որ ի շարս այլ լեզուաց՝ կարդաց ընթացաւարտ օրիորդներէն մէկը։ Եւ ուրիշ ոչինչ։

Այո՛, հնար չեղաւ մեզ՝ այդ հայ հանդէսին մէջ «հայ» կամ «էրմէնի» բառը գոնէ լսել, ըլլայ ուսուցչաց, ըլլայ աշակերտաց բերնին մէջ։ Անոնք ուրիշ բան չէին, եթէ ոչ «ինջիլի», այսինքն «աւետարանական հասարակութիւն», որ՝ կերևի՝ ուխտած էին իրենց «անարգ» ազգութիւնը յիշեցնող բառ մը իսկ բերանէն չհանել։ Ճիշտ սա «լատին» բառին պէս, որ ամէն ինչ կը նշանակէ մերայիններէ իրենց հետևորդներուն համար, բացի հայութենէ։

Շատ մը բողոքականներ կան, նման ամենաթունդ հայ կաթոլիկներու, ինչպէս հաւաստեցին ինձ, որ հայ լեզուով ան-

գամ բարեւելէ կը զգուշանան։ Իրենց անունները, կոչումնին անգամ օտար կը հնչեն։ Օրինակի համար՝ «Եիւհաննա» կըսեն փոխանակ Յովհաննէսի, «Եիւսուֆ» կըսեն փոխանակ Յովսէփի եւ այլն եւ այլն, կաթոլիկ հայերուն «Ժան»-ին եւ «Ժօզէֆ»-ին պէս...։

Եւ ասոնք բոլոր՝ որպէս զի ոեւէ կերպով մը ջոկուին իրենց լուսաւորչական ազգակիցներէն։

Բռնապետութեան շրջանին, ազգային լեզուին դէմ իրենց այս հակակրանքը նոյն իսկ անուղղակի կերպով գործածուած է ընդդէմ մայր-համայնքին, նպաստաւոր դիրք մը ունենալու համար կառավարութեան քով, երբ միւսները հայ լեզուին ոյժ տալով արդէն հակակառավարական կըլլային։

Ինչ որ ցաւալի է այս ամենի մէջ, այն է, թէ անոնք իրենց ձեռին ունենալով կրթական շատ մը հաստատութիւններ՝ կոլէժ, սեմինարիա, աղջկանց կոլէժ, աստուածաբանական վարժարան, հիւանդանոց, որբանոց եւ այլն եւ այլն, իրենց այդ յոռի ազդեցութիւնը փոխանցած են նաեւ կիլիկեան ամբողջ հայութեան, որ նոյնպէս տկար է հայերէնին մէջ։ Նոյն իսկ Այնթապի լուսաւորչական Ադինական եւ Վարդանեան վարժարանները՝ իրենց տասնեակ տարիներու գոյութեամբը՝ այդ տեսակէտով բան մը ըրած չեն։

Եթէ այսօր հակահոսանք մը՝ բողոքականութեան մէջէն իսկ՝ անցեալին այդ վնասները դարմանելու կը ձգտի, ատոր չափով եւ ցայտուն իր երեսը ցոյց կուտայ հակառակ ուղղութիւնը, որուն համար անհամեմատ աղէկ է, օրինակի համար, անգլիերէնի ուսուցումը, քան հայերէնինը։ Եւ ասոնք, դժբաղդաբար, դիւրաւ տեղի տուողներէն չեն։

Ինչպէս ըսինք, վերջին տարիներս Կիլիկիոյ մէջ եւս ձեռնարկներ եղան հայ երկու հատուածոց մէջ կրթական կռուանի վրայ համերաշխութեան ձեռնարկ մը ընել։ Մարաշի կեդրոնականը այժմ կը կառավարուի երկու համայնքներուն ծախքովը եւ վարչութեամբը։

Այս գեղեցիկ փորձը սակայն սարսափի մատնած կը թուի հին բողոքական խումբը։ Անոնց բերանը եղող «Ռահնիւմա» շաբաթաթերթին մէջ արդէն համերաշխութեան, սիրոյ եւ եղբայրական այդ գործակցութեան առթիւ՝ անկէ ծնող վնասները փաստող «հոգեշունչ» յօդուածներ կերեւին, մէկ-մէկու յաջորդող, մէկը միւսէն աւելի ներշնչուած։

Բողոքականութիւնը մեր մէջ հաստատուելէն ի վեր լուսաւորչական աշակերտները մի՛շտ ալ յաճախած են բողոքական

կրթական հաստատութիւնները, և երբէք ոչ ոքի միտքէն չէ անցած սահման մը և արգելք մը դնել անոնց։ Ահա՛ այսօր, երբ երկուստեք կրթական համերաշխութեան փորձ մը կըլլայ Կիլիկիոյ մէջ, անոնք պժգանքի աղաղակներ կարձակեն, չվարանելով իսկ յայտնել որ այդ միացմամբը լուսաւորչականաց և անոնց Եկեղեցիին մէջ ճարակող ապականութիւնքը իրենց բողոքական զաւակներն ալ պիտի վարակեն։

Ինչո՞ւ այսքան վախ, զուր և անհարկի, կրթական միութեան մը շուրջ։ Ի՞նչ. միթէ լուսաւորչական հայերը նոյնպէս նախանձախնդիր չե՞ն իրենց զաւակաց բարոյական կրթութեանը։ Եւ յետոյ՝ այն բաներու մէջ, որ անոնք մեզ վարակուած կը հռչակեն, նոյն չափով ալ իրենց մէջ չկա՞ն։

Մեր ուզածը սակայն կրօնական միութիւն մը չէ։ Թող չը վախնան։ Մենք, աւելի քան ուրիշը, կատարելապէս կը յարգենք հաւատքին ազատութիւնը։ Ամեն ոք իր ուզած կերպով թող պաշտէ իր Աստուածը։ Բայց թէ միասին կրթուելու, ազգային բարոյական և մտաւորական մակարդակին բարձրացումին աշխատելու գործին ալ հակառակելու համար, եթէ մենք ուէ ազատամիտ կաթոլիկի մը անգամ շատ չպիտի տեսնէինք, ցաւ և վիշտ միայն կը զգանք, երբ այդպէս հաշուած և յամառ ընդդիմութիւն մը բողոքականներէ կուգայ։

Զմոռնամ ըսել սակայն, որ Մարաշի համերաշխութեան գլխաւոր սատարներէն մէկը տեղւոյն միսիօնար մր. Մէքալէմը եղած է, մինչ մերոնք անհաբեկած՝ ամեն ջանքը կը թափեն այդ սկսուած գործը քանդելու համար։

Բողոքական պահպանողականաց կուսակիցները եթէ իրենց գլխաւոր ներշնչումը կառնեն Այնթապէն, սակայն ունին իրենց կարող բերանը և գործիքը, յանձին վեր. Գրիգորեանի, Այնթապի կոլէժին նախկին պրօֆէսօրներէն, այժմ խմբագիր «Ռահնիւմայի», հաստատուած Բայբըլ-Հաուզ, Պոլիս։

Դժբաղդաբար իրենց մաքառումը համերաշխութեան գաղափարակցաց դէմ զուր չանցաւ։ Ըսենք, որ Բայբըլ-Հաուզ հաստատուած կարգ մը այլևս անգործ միսիօնարներ նոյնպէս— մր. Բարնըմ, դօքթ. Գրին և Հերիք — անոնց ոյժ տալով, այս տարիէն սկսեալ, կրցան համոզել Պօրտը, որ Թիւրքաբարբառ «Աւետաբերը» ջնջուի, որուն խմբագիրն էր Հէրբէրթ Մ. Ալլէն, և անոր տեղ «Ռահնիւմայի» հրատարակութեան գործը Ալլէնի հակառակորդ կողմին յանձնուի։

Այս շաբաթաթերթը իր ներկայ ոգիովը և ուղղութեամբը բողոքականաց մէջ ծագում առած դէպի առաջ յեղաշրջութեան

գործը ուշացնելու և անդամալուծելու պիտի ծառայէ, եթէ չենք հաւատար թէ պիտի մեռցնէ։

Ատիկա պիտի նշանակէր գաղափարի մահկանացութիւնը։

Այնուամենայնիւ դժխեմ ճակատագիրը դաշնակցած անոնց «բահնիւմայական» այդ ճիգերուն՝ անդարմանելի հարուած մը տուաւ համերաշխականներուն։

Հէրբէրթ Ալէնի մահը, այս տեսակէտով—որքան հայամօտ և հայանուէր գործիչի մը հանգամանքով—շատ ծանր, իր գաղափարակիցները կը թողու միայնակ, յենած իրենց սեփական ոյժերուն և կորովին, որ որքան գովելի, սակայն դեռ տկար են... մինչև որ Պօրտի առաքեալներուն մէջէն ծնի նոր Ալէն մը և Ալէններ, մանուկ այդ գործին վերջնական հասունութիւն մը և բաղձացուած նուիրականութիւնը տալու համար։

ՄԻՔ. ՆԱԹԱՆԵԱՆ

---

# ՄԵՐ ԳՐՈՂՆԵՐԸ

## ԴԻՒՑԱԶՆԵՐԳՈՒՆԵՐ

### 1. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԻՐԶԱՅԵԱՆ ՎԱՆԱՆԴԵՑԻ (*† 1840*)

*Անմոռանալի քերթող մը համարուած է իր Ոսկեդար և Արփիական Հայաստան բանաստեղծական գրուածներով։ Լուրջ քննադատութեան առջև իբր արուեստագէտ անյիշատակ մնալու դատապարտուած է։ Դիւցազներգութեան արուեստը մեր մէջ տակաւին բնաւ գոյութիւն չունեցած, ինքը կը գրէր Արփիական Հայաստան*) դիւցազներգութիւնը։ Վենետիկի Մխիթարեանները դեռ ևս ոչ իսկ հոմերական դիւցազներգութիւնները**) թարգմանած էին. վարժապետ քահանայն՝ առաջնորդ՝ կը գրէր իր դիւցազներգութիւնը։*

*Դիւցազներգութեան նիւթն էր Գրիգոր Լուսաւորչի պատմութիւնը. իրեն հարուստ աղբիւրն էր եղած Ագաթանգեղոսը։*

*Ընդհանուր դիւցազներգութիւնը բաժնած է ութը դրուագներու։ Իր աղբիւրը ինքնին բնական քերթուած մը ըլլալով՝ դիւցազներգու քահանան երևակայութեան խանդավառութեան պէտքը չէ զգացեր։ Շար ի շար տաղաչափուած են առանձին դրուագներով՝ Լուսաւորչի ծնողաց պատմութիւնը, Տրդատայ երիտասարդութեան քաջութիւնները, Խորվիրապին մէջ Լուսաւորչի տեսիլները, Տրդատայ այսահարութիւնը, Լուսաւորչի անմեղութիւնը, արարչագործութեան պատմութիւնը և Սուրբ*

---

**) «Արփիական Հայաստան».—Տպ. 1836-ին յՕրթագիւղ ի տպարանի երից որդւոց Պօղոսի Արապեան Ապուչեխցւոյ։*

***) Հոմերի «Եղիականը» 1843-ին, իսկ «Ոդիսականը» 1848-ին տպագրուած են։*

Գրքի ընդհանուր բովանդակութեան պատմութիւնը Լուսաւորչի բերնով, Քրիստոսի վարդապետութեան աստուածաբանական բացատրութիւնները, Լուսաւորչի յաղթանակը, Տրդատայ բուժումը, քրիստոնէութեան կանգնումը։

Գրական խստապահանջ ըմբռնումով «Արփիական Հայաստանը» բացարձակապէս անյաջող,տաղտկալի դիւցազներգութիւն մըն է։ Պատկերներուն վրայ ուշադրութիւն դարձնելով, երբեմն կը գտնես նիւթապաշտական մարմնացած ոճ մը. տանջանքներուն մէջ իրապաշտ է եղած. գեղեցկութիւնը կը նկարէ արեւելեան թանձր գոյներով։ Վիպասանական հետաքրքրութիւն չի շարժեր։

Փոքր չէ այդ դիւցազներգութիւնը. բաղկացած է 640 էջերէ. իր այդ երկով ինքը պատմիչ տաղաչափ մըն է եղած. բանաստեղծութիւնը յանգաւոր է, գրաբար անկեալ ոճով։

Յատուկ նշմարելի կէտ մըն է բառամոլութիւնը. ընդհանրապէս անգործածելի վերջնադարեան գրաբար բառերով խճողած է իր դիւցազներգութեան էջերը. կը սիրէ բառեր կերտել՝ բարդ բառերու անճաշակ բաղադրութեամբ։

Իբր քերթող՝ ես իր մէջ բնաւ անվիճելի արժանիք մը չեմ գտած. Թիւրքահայ մատենագրութեան մէջ յիշատակելի կը մնայ, վասն զի ինքը կը համարուի մեր առաջին անգամ դիւցազներգութիւն գրողը։

***

## 2. ՇԻՐՈՅԵԱՆՑ ՂԵՒՈՆԴ ՔԱՀԱՆԱՅ

Հրատարակած է Պոլիս Անխօս Մարգարիտ անունով տասնհինգ դրուագներով դիւցազներգութիւն մը։ Դիւցազնուհին՝ Մարգարիտ զոհ կըլլայ իր ծառային։ Նիւթը կը յիշեցնէ Վենետիկ հրատարակուած Գենովափէ սրտաշարժ դիւցազներգութիւնը։ Գերբնական առաքինութեան տէր է դիւցազնուհին Մարգարիտ. ծառան անոր ձեռուըները, ոտուըները կը կտրէ. դաշտերու մէջ կը նետուի, անտիրական անօթի կը տանջուի և օրին մէկը սպարապետի մը կին կըլլայ։ Ծառան զրպարտիչ լեզուով դարձեալ կը հալածէ, բայց ամենէն վերջը առաքինի Մարգարտին արդարութիւնը կը պսակուի։

Բարոյախօս դիւցազներգութիւն մը, առասպելներով չափազանց ծանրաբեռնուած։ Իբրև գրական գործ արժանիք մը չունի։

### 3. Հ. ԱՐՍԷՆ Վ. ԲԱԳՐԱՏՈՒՆԻ

Հայ հին լեզուի անզուգական մշակ Հ. Ա. Բագրատունի մեր ազգային մատենագրութեան մէջ կը թողու դիւցազներգութիւն մը, որ ամեն բանասէր դասակարգի ծանօթ է Հայկ Դիւցազն անունով. իր տեսակին մէջ առաջինն է, որ գրական լիակատար պահանջներով գրուած է։

Նիւթը վիպասանական է։ Հայոց հրեշտակը Հայկայ վրանը երթալով՝ դիւցազին կիմացնէ, որ ծուլօրէն Աստուծոյ պէտք չէ ապաւինած անգործ մնալ, այլ պէտք է պատերազմի ատեն զէնք գործածել։ Հայաստան զէնքեր կը պատրաստէ. հայութիւնը պատերազմելու փափաքով կը խանդավառի։

Երգերուն մէջ՝ ամենէն նկարչագեղն է հարսանեաց հանդէսը, զոր կուրուագրեմ հոս՝ սահմանափակ տողերով։

Պատերազմէն շատ առաջ՝ Հայաստան ուրախութեան մէջ է։ Նոյ նահապետի կառքը կը քաշեն խայտաբղէտ ինձեր, որոնց սանձը ծերունի Թորգոմին ձեռքն է. կառքին մէջ է Մանիտոն քահանան։ Ասոնք Հայկաշէն կերթան. հանդիսականք, զուարթառատ ճաշէն վերջը Նաւասարդի տօնին կը պատրաստուին։ Դափնեպսակ գունդ մը զինուոր կը չուեն. կը շարժի ձիաւոր աւագանին. կը տեսնուին հարիւր օրիորդներ հարսանեկան զգեստով. ուրիշ գունդ մը պայծառագեղ օրիորդներ՝ ձեռուընին դահամունք և ձիւնաթոյր աղաւնիներ։ Փոխն ի փոխ երգերով՝ հանդիսականք կերթան Նազուկայ ծովակին գեղեցիկ կողմերը, ուր սիգաւէտ անկիւն մը՝ կը բարձրացնեն խորան մը, որուն չորս կողմը հեծեալները կը շարուին, և ասոնց կեդրոնը կը կենան պատանիներ և հարսնացու կոյսեր։ Քահանան կաղօթէ, և օրիորդները խորանին վրայ կը դնեն իրենց դահամունքը։ Հայկ կը խօսի, իր Հայկանուշը կը նշանէ Հրանտին հետ, Արուսեակը՝ Խոռայ հետ։ Ու այս խօսքին վրայ, սօսափիւն մը կը հոսի բազմամբոխին միջև։ Մասեաց գահէն Արարիչը կը շարժէ գլուխը, Հայաստանի լեռները, անդունդները կը դողան, ու ծովը կոնք մը ջուրի պէս կը տատանի Բղնունի անդունդներուն մէջ։ Պսակի տարփատենչիկ հանդէսը կը սկսի. սուրբ սեղանին մեղմաքայլ կը մատչին Խոռ, Հայկանուշ, Հրանտ, Արուսեակ և ուրիշ զոյգ զոյգ ուխտաւոր սիրահիներ և պարմաններ։ Տարփատենչիկ հոգիներ, օրիորդ և պատանի, կուխտեն սեղանին առջև հարսանեկան անմեկին մտերմութիւն, և ալ անկէ վերջը միութիւնը կատարեալ էր. «Այնմ

հետէ հոգի և միտք, սիրտ և մարմին ձուլեալք ի մի»։ Հայաստանի դրախտէն Աստղիկ թռչելով կուգայ, ամպերուն վրայէն վարդ կը թափէ, հարսերուն գլուխը ծիրաներփեան պսակներով կը զարդարէ, և նոյն ատեն՝ կոյսերը աղաւնիներ կը թռցնեն։ Պսականուէր ամոլները թև ի թև, սիրտ ի թունդ կողջագուրուին իրենց ծնողաց հետ։ Կը ճաշեն, կը կաքաւեն։ Եւ ամենէն վերջը ուրախ զուարթ՝ ականակիտ աւազաններու մէջ նետուելով կը լողան...

Բէլի կողմէն՝ Բաբ կը հասնի, Հայկայ կիմացնէ, որ եթէ ինքը Բէլին խոնարհի, անոր բարութիւնները պիտի վայելէ. ու կիմացնէ որ Բէլ՝ Հայկանուշը իրեն կնութեան կուզէ առնել։ Հայկ կիմացնէ, որ եթէ Բէլ խանգարէ Հայաստանի խաղաղութիւնը, ինքը պատերազմելու պատրաստ է։ Պատմութիւնը կը հռչակէ հայոց հօր դիւցազնութիւնը, և Բագրատունին հ. Արսէն՝ երգած է այդ քաջութիւնը քսան վիպասանական դիւցազներգու դրուագներով։ Ըստ պատմութեան՝ Բէլ կը մեռնի Հայկ նահապետի հարուածով. Հայաստանի հրէշը տապալած ատեն՝ ըստ դիւցազներգութեան՝ Աստուած կը ժպտի, հրեշտակները կը ծափահարեն։

Հ. Բագրատունի իր այս դիւցազներգութեամբ ցոյց տըւած է լիովին հմտութիւն դասական քերթողութեան. հին յոյն, հռոմէական, տիեզերահռչակ քերթողները իրեն օրինակ են եղած։ Դանտէն հանրագիտակ միտք մըն է իր «Աստուածային կատակերգութեանց» մէջ. այդ գրական պահանջ մըն է, որուն մէջ հ. Բագրատունի ևս թերացած չէ։ Գերբնական ոյժով օժտած է իր դիւցազները. անոնց բերանը բարձր փիլիսոփաներու պերճախօսութիւնը դրած է. եբրայական գերասքանչ քերթողութեան արձագանգ է եղած։ Իր աչաց առջև դրած է ամենէն անուանի դասական քերթողները և անոնց վրայ կաղապարած է «Հայկ Դիւցազնի» նիւթը և արդուզարդը։

Անվիճելի բանաստեղծական միտք մըն է. գիւտերը ճոխ, պերճագեղ, մերթ փափկանազ և շատ անգամ խրոխտ. սակայն ինքնուրոյն ձայն մը չունի. ընդհանրապէս հետևող է եղած։

Նկարները գերապանծ են և կը յիշեցնեն Պավլօ Վէրօնէզէ և Տինտօրէտտօ, որոնց մէջ կը խօսի արուեստի գերագոյն վեհափառութիւնը։ «Հայկ Դիւցազնը» քերթողական գրականութեան բառարանական ճոխ շտեմարանն է։ Փափուկէն աւելի, անոր մէջ կը գանգիւնէ գերասքանչ կորովը ջլապինդ։ Մխիթարեան տաղարանաց մէջ ունի բազմաթիւ բանաստեղծութիւններ, որոնք ընտանեկան քնարերգութիւններն են։

Ե.

# ՄԱԿԱԲՈՅԾԵՐ

## I

*Մեր առողջութեան խնդիրը մեր կեանքի մէջ պէտք է լինի ամենաառաջինը, քանի որ վաղուց ասուած է. «Առողջ հոգին է առողջ մարմնի մէջ»։*

*Մարդուս առողջութեան քայքայման պատճառները բազմաթիւ են, բայց մեծ մասամբ մեր օրգանիզմը հիւանդանում է զանազան միկրոբների շնորհիւ, որոնք այս կամ այն ճանապարհով ներս են մտնում նրա մէջ, ապրում, զարգանում, աճում նրա հաշուով և առաջացնում տարբեր-տարբեր ծանր և թեթև հիւանդութիւններ։*

*Այդ պատճառով այդ էակներին մենք մի խօսքով ասում ենք մակաբոյծներ։*

*Ուրեմն մեզանից ամեն մէկը պէտք է լաւ տեղեակ լինի այդ անսահման մանր արարածների մասին, որպէս զի որոշ դէպքերում իրան հեռու պահէ նրանց ներմուծումից օրգանիզմի մէջ և նրանց առաջացրած հիւանդութիւններից։ Այժմ անցնենք նրանց ուսումնասիրութեանը։*

## II

*Մակաբոյծներ կոչվում են այն էակները, որոնք կարող են սնուել և ապրել որևէ այլ օրգանիզմի հաշուին։*

*Եթէ մակաբոյծները անկարող են լինում ներս մտնել օրգանիզմի մէջ և ապրում են միայն նրա վրայ, սնուելով տիրոջ արիւնով կամ հիւսուածքների բաղադրիչ մասերով, ապա ընդունուած է այդպիսի մակաբոյծներին անուանել* եպիֆիտէս *և այն էլ այն դէպքում, երբ նրանք պատկանում են բուսական թագաւորութեանը. իսկ եթէ մակաբոյծները կենդանական թագաւորութեան ներկայացուցիչներից են, նրանք կոչվում են* եպիզօա*։ Մակաբոյծների առաջացրած փոփոխութիւնները օրգա-*

*նիզմի մէջ երբեմն լինում են աննշան (ինչպէս օրինակ միջատների դասին պատկանող մի շարք մակաբոյծների ժամանակ), երբեմն էլ նրանց շնորհիւ օրգանիզմի մէջ տեղի են ունենում չափազանց լուրջ փոփոխութիւններ և վտանգաւոր պրոցէս։*

*Մարդու մարմնի վրայ և մէջ կարող են բնակութիւն հաստատել թէ կենդանական և թէ բուսական թագաւորութիւններին պատկանող մակաբոյծները։ Ամենաստորին բոյսերի ներկայացուցիչները, որոնք են՝ ստորին սունկերը, դրօժերը և այլն, նաև բակտերիաները շատ մեծ և վնասակար դեր են կատարում մարդու օրգանիզմի համար, երբ մտնում են նրա մէջ։*

*Կենդանական թագաւորութեանը պատկանում են մի քանի յօդուածոտունք, ճիճուները և ստորին կենդանիների դասին պատկանող էակները, որոնց մի խօսքով անուանում են* պրոտօզօա։

*Այն հիւանդութիւնները, որոնք առաջանում են յիշածս մակաբոյծներից, կոչվում են* տարափոխիկ, ինֆեկցիօն *հիւանդութիւններ, իսկ ճիճուների և միջատների առաջացրած հիւանդութիւններին երբեմն ասում են* զօօնօզա, *կամ* ինվազիօն *հիւանդութիւններ. ճանճերին պատկանող մի քանի ցեղերի թրթուրների առաջացրած հիւանդութիւններին ասում են* միազա։

III

## *Բուսական մակաբոյծներ։ Բակտերիաներ։*

*Բակտերիաները միաբջիջ ստորին էակներ են բուսական թագաւորութեան մէջ և շատ նման են ստորին սունկերին. Նրանք չունեն քլօրօֆիլլ և այդ պատճառով անկարող են օդի ածխաթթուն լուծել և կազմել ածխածնուտ միացութիւններ։*

*Բակտերիաները չափազանց մանր են և խոշորացոյցի տակ ունեն կլոր կամ շրջանի ձև. այդ դէպքում նրանց անուանում են* կօկկ *կամ* միկրօկօկկ։

*Կամ նրանք լինում են գլանաձև (ձողիկաձև) մարմիններ և կոչվում են* բացիլլ։

*Պատահում է, որ ձողիկը լինում է ոչ ուղիղ, այլ ոլորաձև. այդ դէպքում էլ մակաբոյծներին ասում են* սպիրիլլ։

*Զանազան բակտերիաների մեծութիւնը և ձևը տատանվում է չնչին սահմանների մէջ, սակայն, եթէ արտաքին պայ-*

մանները նրանց համար նպաստաւոր չեն լինում, երբեմն առաջանում են ինվօլյուցիօն ձևեր, այսինքն՝ բակտերիայի բջիջի մէջ առաջանում են փքուածներ, հաստութիւններ ու վակուօլներ, և այդ ձևով բակտերիան երբեմն քայքայվում է հատիկների ու լուծվում։ Բակտերիայի բջիջի կազմուածքը՝ շնորհիւ մակաբոյծի անսահման փոքրութեան՝ դեռ բաւականին ուսումնասիրուած չէ. բայց՝ այնուամենայնիւ՝ զանազան պայմաններում և տարբեր-տարբեր քիմիական փորձերով հաստատուած է, որ բակտերիաները իրանց շուրջը ունեն թաղանթ, որի նիւթը քիչ տարբերվում է բուսական ցելլիւլեզից (խորշաթաղանթից). այդ թաղանթը կենդանական բջիջի թաղանթից կարծր է (թունդ կալին, օրինակի համար, լուծում է կենդանական թաղանթը, և բակտերիաները պարզ երևում են խոշորացոյցի տակ)։

Բակտերիաների թաղանթը զանազան պայմաններում կարող է փքուել և վերափոխուել մաղասոտ (լործի նման) նիւթի. այդ դէպքում բակտերիաները կարծես շրջապատուած են լինում ծածկոցով կամ պատիճով։

Մի քանի տեսակ բակտերիաները միայն որոշ պայմաններում են շրջապատուած լինում պատիճներով, և այդ երևոյթը ունի մեծ նշանակութիւն նրանց ճանաչելու համար։

Բացի պատիճից, բակտերիաները բաղկացած են մարմնից—պրատապլազմից, այսինքն սպիտակուցային նիւթից, որին ասում են միկրո-պրօթէին կամ բակտերիօ-պրօթէին։

Բակտերիաների մարմնից մզած նիւթերը կենդանիների օրգանիզմի համար բաւականին թունաւոր են, ինչպէս օրինակ խօլերայի բացիլլների պրատապլազմի նիւթը. կամ այդ նիւթերը առաջացնում են առողջ մարմնի մէջ ժահրոտում։ Բացի յիշածս նիւթերից, որոշ բակտերիաների մարմնի մէջ պատահում են զանազան տեսակ այլ նիւթեր, օրինակ՝ ծծումբ, երկաթ, օսլա, պիգմենտներ—(մարդկային մարմնի ներկանիւթ)—բակտերիօ-պուրպուրին և այլն։

Մի շարք բակտերիաների պրատապլազմի մէջ երբեմն յատուկ պայմաններում կարելի է նկատել, թէ ինչպէս առաջանում են հատիկներ, որոնք շատ ժամանակ հաւաքվում են բևեռներին. այդ երևոյթին ասում են Նէյսերեան հատիկաւորում։

Դժուար է ապացուցել, թէ բակտերիաների պրատապլազմը ունի կորիզ, ինչպէս բոյսերի կամ կենդանիների բջիջները։

Բակտերիաներից շատերը կարող են ազատ շարժուել, ո-

մանք էլ անշարժ են։ Նրանց շարժումը առաջանում է շնորհիւ մազաչափ բարակ թելերի, որոնք ոչ այլ ինչ են, եթէ ոչ բակտերիայի թաղանթի ցցուած բիբերը։ Պէտք է ասել, որ բարեյաջող պայմաններում բակտերիաները կարող են սրագութեամբ և առատօրէն աճել, զարգանալ, խոտորնակի բաժանուել։

Աճման ճանապարհով առաջացած բակտերային նոր բջիջները կամ հեռանում են իրարից, կամ իրանց թաղանթի արտաքին շերտով մնում են իրար հետ միացած։ Այդ պատճառով բացիլլները վերափոխվում են երկար թելերի, որոնք՝ կարծես՝ բաղկացած են լինում մի հատ միայն բակտերիայից, ուստի և կոչվում են լեպտօթրիքս։ Այն դէպքերում, երբ կլոր բակտերիաները, այսինքն կօկկերը բաժանման ժամանակ այնուամենայնիւ մնում են իրար հետ կապուած, ապա ստացվում են բակտերիաների ուրոյն ձևեր. այդպէս, երբ միկրօկօկկի բաժանումից առաջացած երկու կլոր բջիջը մնում են իրար հետ կապուած, այդ դէպքում ստացվում է կրկնակի կօկկ, կամ դիպլօկօկկ։

Բացի յիշածս բաժանման՝ կան դէպքեր, երբ բակտերիաները բաժանվում են չորսի, որ կոչվում է տետրակօկկ, ութի՝ սարցին։ Մի քանի դէպքերում կօկկերի բաժանումը ընթանում է մի ուղղութեամբ. նոր օրինակները մնում են հների հետ կապված այնպէս, որ ստացվում է կօկկերի շղթայ—ստրեպտօկօկկեր։ Պատահում է, որ բաժանումը ընթանում է անհաւասարաչափ զանազան ուղղութեամբ, որի հետևանքը լինում է այն, որ ստացվում է մի կոյտ՝ նման խաղողի ողկոյզին—ստաֆիլակօկկեր։ Բաժանման բոլոր այդ ձևերը տեղի են ունենում որոշ պայմաններում և ծառայում են որպէս հիմք բակտերիաներին դասերի բաժանելու համար։ Երբ բակտերիայի աճման և զարգացման պայմանները վատանում են, ապա նրանց պրոտապլազմի մէջ առաջանում են հատիկներ, որոնք պրոտապլազմի և թաղանթի հետ կամաց-կամաց վերափոխվում են պսպղուն ձուաձև մարմնի և մնում բակտերիայի կամ մի ծայրին կամ մէջ։ Այդ մարմնին ասում են բեղմնիկ (spore)։ Բեղմնիկները (կարծրացած բակտերիաներ) շատ դիմացկուն մարմիններ են, չեն փչանում հեշտութեամբ ոչ խիստ տաքութեան ազդեցութիւնից, ոչ էլ չորութիւնից, նաև այնքան էլ շուտ չեն ոչնչանում զանազան թոյների ներգործումից։ Երբ նրանք ընկնում են բարեպատեհ պայմանների մէջ, ապա սկսում են նորից աճել և զարգանալ, պահպանելով իրանց տեսակի ուրոյն առանձնայատկութիւնները։

Սակայն պէտք է նկատել, որ բեղմնաւորման պրոցէսը յատուկ է միայն ձողիկանման և ոլորտաձև մի քանի բակտերիաներին, այնպէս որ կոկկերը անկարող են ունենալ նման պրոցէս։ Ինչպէս ասել ենք, բակտերիաների աճման համար հարկաւոր է ջրի որոշ քանակութիւն, ուր նաև պէտք է լինեն նրանց ճաշակին յարմար սննդարար նիւթեր, — սպիտակուց։

Այդ սննդարար նիւթերի մէջ բակտերիաների համար ամենից անհրաժեշտն է բորակածինը (ազօտը) և նոյնպէս կարևոր ածխածնային միաւորումների աղերը։ Բորակածնի շնորհիւ բակտերիան կազմալուծում է սպիտակուցները և նրանցից պատրաստում իր պրոտոպլազմը։ Բակտերիաների բազմաթիւ տեսակների մէջ ոմանք սնվում և աճում են կենդանի օրգանիզմի սպիտակուցով, ոմանք էլ միայն կազմալուծում են ոչընչացած սպիտակուցները։ Ախտաբանութեան մէջ առաջին մակաբոյծները կոչվում են սապ-րոֆիտներ և ունեն էական նշանակութիւն։

Որովհետև մակաբոյծները օրգանիզմի մէջ առաջացնում են զանազան հիւանդութիւններ, ուստի նրանց անուանում են ախտամուծող բակտերիաներ։

IV

Բակտերիաներից ոմանք կարող են ապրել միայն այն միջավայրում, ուր կայ թթուածին. այդպիսի բակտերիաներին ասում են աէրօբներ։ Բայց կան և այնպիսիք, որոնք ոչնչանում են թթուածինի ներգործումից. նրանց էլ անուանում են անէրօբներ։

Բակտերիաների կեանքի մէջ տեղի են ունենում այնպիսի դէպքեր, երբ ոմանք պատրաստում են միւսների համար ապրուստի բարեկեցիկ պայմաններ, կամ մի շարք մակաբոյծների գոյութեան խնդիրը սերտ կապուած է լինում միւսների գոյութեան հետ և հակառակը. այդ երևոյթին ասում են սիմբիօզ։

Այն միջավայրը, ուր բակտերիաները հաստատում են բնակութիւն, ենթարկվում է մեծ փոփոխութիւնների։

Վերածելով օրգանական բարդ նիւթերը պարզ և հասարակ նիւթերի, բակտերիաները իրանց մարմնից միաժամանակ արտադրում են այնպիսի նիւթեր, որոնք չափազանց թունաւոր են լինում կենդանի օրգանիզմի համար։ Բացի այն, որ նրանք քայքայում են սպիտակուցները և վերածում նրանց ջրի, ած-

խածնի, ջրածնի, ամմօնիակի և այլն, բակտերիաներից շատերը փտեցնում են սպիտակուցները, որից առաջանում է գարշահոտ։

Բակտերիաների թունաւոր նիւթերը գտնվում են նրանց մարմնի մէջ. երբ մակաբոյծները զանազան դէպքերում լուծվում են մարմնի մէջ, ապա այդ նիւթերը անցնում են արեան շըրջանառութեան մէջ և տարածվում օրգանիզմի զանազան մասերում։

Կամ իրանց կեանքի շրջանում բակտերիաները և ապրում են և արտադրում իրանց շուրջը այդ նիւթերը։ Այդ թունաւոր նիւթերի մէջ առանձնապէս յիշելի են պտօմաինները և տօքսալբումինները։

Երբեմն այն բակտերիաները, որոնք իրանց գոյութեամբ այնքան էլ վտանգաւոր չեն, ինչպէս օրինակ baccillus coli communis—աղիքային բացիլները, սիմբիօզի շնորհիւ փոխվում են չափազանց թունալի և վտանգաւոր մակաբոյծների։ Ներս մտնելով օրգանիզմի մէջ՝ բակտերիաները առաջացնում են զանազան հիւանդութիւններ։ Այդ ներս մտնելը, որից առաջանում են հիւանդութիւններ, կոչվում է ինֆեկցիա, իսկ հիւանդութիւնները՝ ինֆեկցիօն կամ տարափոխիկ հիւանդութիւններ։ Պէտք է նկատել, որ ինչպէս բակտերիաների ներս մըտնելը, նոյնպէս էլ նրանց բնակութիւնը օրգանիզմի մէջ միշտ չի առաջացնում հիւանդութիւններ. օրգանիզմի այդ յատկութիւնը, այն է՝ չվարակուել մակաբոյծեր եղած դէպքում, կոչվում է իմմունիտետ (անզգայութիւն)։ Մի դէպքում իմմունիտետը առաջանում է շնորհիւ նրան, որ օրգանիզմը վաղուց վարակուած է եղել տարափոխիկ հիւանդութեամբ, միւս դէպքում անզգայնութիւնը բնական առանձնայատկութիւնն է զանազան ցեղերի, որոշ ինդիվիդների, կենդանական թագաւորութեան տարբեր-տարբեր տեսակների և այլն։ Երբեմն այդ նպատակով, այսինքն՝ օրգանիզմը անզգայ դարձնելու համար նրա մէջ սրսկում են վակցինա և այդպիսի արհեստական եղանակով առաջացնում թեթև կերպով այս կամ այն տարափոխիկ հիւանդութիւնը (ինչպէս օրինակ ծաղկի պատուաստումն և այլն)։

## V

Թէ ինչի՞ց է առաջանում իմմունիտետը, այդ դեռ լաւ ուսումնասիրուած չէ. ոմանք բացատրում են, թէ դրա պատճառը կայանում է օրգանիզմի փոփոխութեան ենթարկուած նիւթերի

մէջ, կամ նոյնպէս փոփոխութեան ենթարկուած արեան քիմիզմի մէջ. ուրիշները իմմունիտետը վերագրում են օրգանիզմի բջիջներին, որոնք ոչնչացնում են այլասեռ մարմինները և այլն։ Ժառանգական իմմունիտետը բացատրվում է նոյնպէս ոչ-հիմնովին, բայց ընդհանրապէս վերագրվում է վերոյիշեալ ենթադրութիւններին։

Մի շարք տարափոխիկ հիւանդութիւնների ժամանակ՝ օրգանիզմի մէջ գոյանում են ուրոյն նիւթեր, որոնք լինում են լուծուած աւշի և արեան մէջ և որոնք հիւանդութիւն առաջացնող մակաբոյծերի և նրանց արտադրած թոյների վրայ ներգործում են որոշ ազդեցութիւն։ Օրգանիզմի վարակման հետեւանքը լինում է այն, որ նրա մէջ գոյանում են առանձին սպիտակուցներ, որոնք չէզոքացնում են բակտերիաների արտադրած թոյների՝ տօքսինների ոյժը։ Նոր պատրաստուած սպիտակուցանման այդ նոր նիւթերը կոչվում են անտիտօքսին։ Անտիտօքսինները, միանալով տօքսինների հետ, չէզոքացնում են վերջինների ոյժը, բայց ամենևին չեն ոչնչացնում նրան։ Բացի այդ՝ կան և շատ հակաթոյներ, որոնք զանազան ճանապարհով պատրաստվում են օրգանիզմի մէջ և պահպանում նրան մակաբոյծերի թոյների քայքայումից։ Նրանց թւում պէտք է յիշել պրեցիպիտին, օպսօնին, ալէկսին և այլ հակաթոյները, որոնք դեռ լաւ ուսումնասիրուած չեն։

Վարակիչ հիւանդութեան թոյնը ներս է մտնում օրգանիզմի մէջ զանազան ճանապարհով՝ շնչած օդի միջոցով, կերակրի հետ, կաշու ճեղքուածքից, կամ սաղմը կարող է վարակուել մօր արգանդում եղած ժամանակ (Պլացենտար ինֆեկցիա)։

Կան մակաբոյծեր, որոնք ապրում, զարգանում և աճում են միայն կենդանի օրգանիզմի մէջ (ինչպէս սիֆիլիսը մարդու օրգանիզմի մէջ), ուր նրանց համար կայ պարարտ հող։ Նման հիւանդութիւններին ասում են կօնտագիօզ հիւանդութիւններ, իսկ մակաբոյծերին՝ կօնտագի։

Իսկ այն մակաբոյծերը, որոնք անկախ որևէ օրգանիզմից աճում և բազմանում են դուրսը, զանազան միջավայրերում, ջրի և տղմի մէջ, ճահճային վայրերում (ինչպէս դողացաւը), կոչվում են միազմեր; իսկ դրանց առաջացրած հիւանդութիւնները՝ միազմատիկ հիւանդութիւններ։ Խոլերան, օրինակի համար, կօնտագիօզմիազմատիկ հիւանդութիւն է։

## VI

## Բակտերիաների պէս-պէս տեսակները

1. Ժահրածին ստաֆիլակօկկեր, որոնք մարմնի մէջ լինելով՝ առաջացնում են ժահր. երբ նրանք օրգանիզմի մէջ միանում են ուրիշ մակաբոյծերի հետ, ապա նրանք ստանում են բաւականին վնասակար յատկութիւն։

2. Ստրեպտօկօկկեր, որոնք նման են առաջիններին, բայց նրանցից քիչ փոքր, սակայն աւելի վնասակար. նրանք առաջացնում են քութէշ, փոշացաւ (angina), թոքերի և երեսն այլանդակող (կարմիր քամի) բորբոքումներ։

3. Փրէնկէլ-Վէյխսէլմանի դիպլօկօկկեր եւ մենինգօկօկկեր, որոնք շատ նման են իրար. առաջինները առաջացնում են ժահրոտ մենինգիտ և գտնվում են նաև բորբոքուած թոքերից արտահանուած նիւթերի մէջ (թքի մէջ)։ Մենինգօկօկկերը գտնվում են բորբոքուած ուղեղաթաղանթների թարախի մէջ։

4. Գօնօկօկկեր (Նէյսերի), որոնք լինում են ջուխտ-ջուխտ և նման ձեռագիր իքսի (x) (երկու հաւասար մասի բաժանած խնձորի՝ հակառակ կողմերով իրար կպցրած)։ Գօնօկօկկերը սովորաբար կլանում են լէյկոցիտները (արեան սպիտակ բջիջները), որոնց մէջ երբեմն նրանք դարձեալ սնում են, և այդպիսով առաջանում են կրկնակի կօկկեր։ Գօնօկօկկերը առաջանում են միզանցքի և կանանց սեռական գործարանների բորբոքումից։

Տղամարդկանց վերաբերեալ այդ հիւանդութիւնը կոչվում է տրիպպեր, իսկ կանանց՝ ճօնօրրօյ։ Տրիպպերի հասցրած չարիքը շատ մեծ է. ի զուր են շատերը՝ հիւանդութեան մի քանի թեթև, չբարդուած դէպքերում՝ կարծում, թէ տրիպպերը հասարակ ցաւ է։ Ո՛չ ամենևին։

Եղել են, կան և կը լինեն այնպիսի բարդութիւններ, ինչպէս օրինակ լանջաթաղանթի, ամորձիքների (ձուերի), նրբանց յաւելեալների, յօդերի և այլ բորբոքումները, որոնք հետևանք են միզանցքի վաղեմի բորբոքման։ Ամորձիքների բորբոքման հետևանքը լինում է այն, որ այդ հիւանդութիւնն ունեցած տղամարդկանցից էլ չեն առաջանում զաւակներ. նրանք, ինչպէս գունաւոր կերպով ասում է մեր ժողովուրդը, չորանում են։

Իսկ ինչ մնաց ասել այն վէրքերի մասին, որոնք երբեմն,

*թէև շատ հազուադիւտ դէպքերում, առաջանում են սեռական անդամների վրայ (տղամարդկանց և կանանց), այդ մասին թող հիւանդներն իրանք վկայեն, որոնք յաճախ տարիներով մնում են անբուժելի և զրկուած սեռական յարաբերութիւն ունենալու յարմարութիւնից։*

*Կատարեալ մի պատուհաս է տրիպպերն այդ դէպքերում հիւանդների գլխին։*

5. Պֆեյֆերի կամ ինֆլուէնցի *բացիլներ, որոնք գտնվում են քթի և շնչափողի մէջ, երբ վերջիններս բորբոքվում են. բացիլները քթից կարող են անցնել նաև ուղեղաթաղանթների մէջ և բորբոքել նրանց։*

6. Ֆրիդլէնդերի դիպլօկօկկեր կամ պնեւմօբացիլներ. *գտնվում են թոքերի բորբոքման մի քանի դէպքերում։*

7. Ընդարմացնող բացիլներ (Bacillus tetani), *որոնք առաջացնում են ուժգին ջղացնցումներ, երբ ներս են մտնում օրգանիզմի մէջ։ Բացիլների տօքսինը (թոյնը) ներգործում է միայն ջղային սիստեմին և մէջքի ուղեղի վիթխարի բջիջներին։ Վարակումն առաջանում է զանազան ճանապարհներով և պէսպէս պատճառների շնորհիւ, ինչպէս օրինակ վէրքը կեղտոտ պահելուց, նորածնի պորտիկը կեղտոտացնելուց և այլն։ Ընդարմացնող բացիլները շատ դիմացկուն են. մի ժամուայ ընթացքում 80° ջերմութիւնը նրանք անվնաս տանում են։ Թթուածին եղած ժամանակ նրանք չեն աճում, նոյն իսկ ոչնչանում են. բայց միանալով ուրիշ բացիլների, նրանք կարող են լինում զարգանալ և աճել նոյնիսկ թթուածին եղած վայրում, շնորհիւ սիմբիօզի, որ տեղի է ունենում իրար պատահած երկու կամ մի քանի մակաբոյծների մէջ։*

8. Լօյֆլերի կամ դիֆտերիտի բացիլներ, *որոնք բնակութիւն են հաստատում կոկորդում և առաջացնում տեղում գտնուող գեղձերի բորբոքումն. բացիլները երբեմն անցնում են շնչափողի մէջ և առաջացնում թէ շնչափողի և թէ թոքերի բորբոքում։*

*Եղել են դէպքեր, երբ այդ հիւանդութեամբ վարակուած երեխաներից բորբոքումը անցել է նրանց սեռական գործարանների վրայ։*

*Դիֆտերիտի բացիլները արտադրում են շատ ուժեղ թոյն, որը ծծուելով օրգանիզմի մէջ՝ առաջացնում է ջղային սիստեմի, սրտի և երիկամունքների վարակում։*

*9.* Պալարախտի բացիլները — Bacillus anthracis, бац. сибирской язвы—*ունեն խոշոր ձողիկների ձև. առանձին դէպ-*

քերում այդ մակաբոյծները կարող են 100° ջերմութիւնը մի-րոպէ անվնաս տանել։

Պալարախտով առհասարակ բռնվում են ձիերը, կովերը, ոչխարները, իսկ հազուագիւտ դէպքերում և մարդիկ, որոնք անուղղակի կերպով վարակվում են այդ անասուններից, կամ երբ նրանց խայթում է պալարախտի բացիլներն իր մէջ պարունակող որևէ միջատ։

Անասունների մօտ՝ հիւանդութիւնը տեղ է բռնում նրանց մարսողական գործարանում, որտեղից բացիլները քամվում են արեան մէջ և վարակում ամբողջ մարմինը։ Փայծաղը վարակումից ուռչում է և ստանում ահագին մեծութիւն։ Մարդկանց մօտ՝ հիւանդութիւնը սկսվում է մորթից, որի վրայ բռնում է մի չարորակ կծպտուկ (pustula), և դրանից առաջանում է օրգանիզմի վարակումը (ինչպէս այդ վայել է սիֆիլիսին)։ Բացի այդ ճանապարհով վարակուելուց, պալարախտը կարող է հաստատուել և թոքերի մէջ. այդ դէպքերը տեղի են ունենում շորեր կամ մորթիներ մաքրող մարդկանց վերաբերեալ, ուստի հիւանդութեանը նաև ասում են «тряпичная болѣзнь»=փալասախտ (թուրքերէն գուցէ փալաս=շոր խօսքից)։

10. Էբերթ-Գաֆֆկի բացիլներ կամ փորի տիֆ, որոնք ընդունակ են արագ-արագ շարժումներ կատարել և ունեն բեխիկներ, որոնցով ծածկուած է լինում նրանց ողջ մարմինը։ Բացիլները սիրում են բնակուել աղիքներում, նաև պատահում են փայծաղում, լեարդում, աղեկալ թաղանթի գեղձերում, որոնք վարակումից սաստիկ ուռչում են։

Երբեմն բացիլները ընկնում են արեան մէջ, բայց այստեղ նրանք անկարող են լինում աճել, սակայն արեան հոսանքի հետ նրանք տարվում են օրգանիզմի զանազան գործարաններն ու առաջացնում ոսկրի, ուղեղի, ուղեղաթաղանթների բորբոքումներ. այդ դէպքերում տիֆի բացիլների հետ վարակուած վարում լինում են ստաֆիլօկօկկեր, ստրէպտօկօկկեր կամ միայն ժահրածին բակտերիաներ, որոնք միասին արտահանում են ուժեղ թոյն։

Տիֆի բացիլները գտնվում են հիւանդի կղկղանքում և լեղիի մէջ, նաև արեան, երբեմն էլ մէզի մէջ, երբ երիկամունքները նոյնպէս լինում են բռնուած այդ ցաւով։ Տիֆի բացիլները գտնուել են այն վայրերի ջրերում, ուր եղել են նոյն ցաւով բռնուածներ. բայց որոշակի ցոյց տալ այն վայրերը, ուր նրանք մշտապէս գոյանում են, շատ դժուար է, որովհետև տի-

ֆի բացիլները շատ նման են բեղմնիկներին, որոնք նոյնպէս ապրում են հողի և ջրի մէջ։ «Տիֆ» խօսքը յունարէն է (տիֆուս) և կը նշանակէ մառախուղ։ Տիֆոտները հիւանդութեան ժամանակ ամեն ինչ տեսնում են մառախուղի, խաւարի մէջ։

11. Աղիքների բացիլներ, որոնք սովորաբար լինում են համարեա թէ ամեն մի մահկանացուի աղիքներում։ Սովորական պայմաններում նրանք անվտանգ են, բայց երբ աղիքներում պատահում են այլ մակաբոյծեր, ապա նրանց դերը փոխվում է. նրանք այդ դէպքում սկսում են թունաւորել օրգանիզմը, առաջացնելով միւս մակաբոյծերի հետ ժահրոտ բորբոքումներ լեարդի, լանջաթաղանթի և լեղիի մէջ։

12. Ժանտախտի բացիլ—Bacillus pestis orientalis—որոնք առաջացնում են բուբոնաւոր ժանտախտ. նրանք նման են փոքրիկ ձողիկների։ Ներս մտնելով օրգանիզմի մէջ զանազան ճանապարհներով (վիրաւոր մորթի ճեղքուածով, օդի հետ և այլն), բացիլները կանգ են առնում աւշային անօթներում և այդտեղ արագօրէն աճում, որի հետևանքը լինում է այն, որ աւշային գեղձերը չափազանց մեծանում են (բուբոն) և ժահրոտում։

Նոյնը տեղի է ունենում և լեարդի մէջ։ Շատ կարճ ժամանակի ընթացքում բացիլները ընկնում են արեան մէջ և վարակում ողջ մարմինը իրանց տոքսիններով։

ՎԱՀ. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

(Կը շարունակուի)

---

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

**«Кавказъ».** Матеріалы по археологіи Кавказа, собранные экспедиціями Императорскаго Московскаго Археологическаго Общества, снаряженными на ВЫСОЧАЙШЕ дарованныя средства. Выпускъ VI. Москва, 1911. Подъ ред. гр. Уваровой.

*(Կովկասի հնախօսութեան մասին նիւթեր, հաւաքուած՝ Մոսկվայի Կայսերական Հնագիտական Ընկերութեան կողմից, յարդարեալ՝ գիտական արշաւանքների ժամանակ՝ Բարձրագոյն շնորհուած միջոցներով: Դրուագ* VI. *Մոսկվա, 1911, խմբագրութեամբ կոմսուհի Ուվարովայի)*

III *)

*Աւարտելով իր գիտական արշաւանքները Սևանի լճի շրջակայքում, Ա. Իվանովսկին դիմում է Արաքսի տօթ հովիտը: Ճանապարհին Ստորին-Ախտայից նա շեղվում է հարաւ-արևմտեան ուղղութեամբ՝ դէպի Սոլակ գիւղը և Բջնի՝ ստուգելու դիտաւորութեամբ բևեռագիր արձանագրութեան գիւտի պատմութիւնը: Նա գնում է Հրազդանի ափերով, ուշադրութեամբ զննելով բոլոր տեղերը. բայց պատմութիւնը չի ստուգվում: Արաքսի հովիտը մեր ճանապարհորդը կտրում է զանազան ուղղութեամբ. առաջին անգամ Էջմիածնից դէպի Տաշբուրուն, Արալըխ, յետոյ դէպի Սարդար-Բուլակի անցքը Մեծ ու Փոքր Արարատների միջև նախնական հետազօտութեան նպատակով, որոշելու համար այն վայրերը, ուր պէտք էր կատարել այս կամ այն աշխատանքը և խուզարկութիւնը: Այդ իսկ միջոցին Ա. Իվանովսկին զինուորական տօպօգրաֆ Ա. Վ. Պաստուխովի ընկերակցութեամբ վերելք է կատարում Մեծ Արարատի (16,916 ֆուտ) և Փոքր Արարատի (12,840 ֆուտ) վրայ: «Առանց կանգ առնելու այս վերելքների վրայ, որոնք զուտ աշխարհագրական նշանակութիւն ունեն,—ասում է ռուս գիտնականը,—ես չեմ կարող մի քանի խօսք չասել Փոքր-Արարատի վրայ եղած գերեզմանների մասին, որոնց գոյութեան վրայ ակնարկում է հանգ. Գ. Ի. Ռադդէ (տես* «V Археологическій Съѣздъ въ Тифлисѣ», *էջ 33): Արդարև, Փոքր Արարատի կատարի վրայ կայ փոքրիկ գերեզմանատուն: Գերեզմանների վրայ ակնար-*

*) «Արօր» № 5—6.

կում են քարեղէն սալեր (կոպտօրէն տաշած), որոնցից մի քանիսը պառկած են, միւսները կանգնած, ինչպէս մահմեդական գերեզմաններում։ Քարերի վրայ նշմարվում են արաբական գրութիւններ, և գերեզմանները անհնարին էր փորել՝ մշակների բացակայութեան պատճառով։ Հանելուկ է, թէ ինչո՞ւ և ի՞նչ նպատակով համարեա 13,000 ոտնաչափ բարձրութեան վրայ թաղումներ են կատարուած։ Դոկտոր Max Ebeling 1897 թ. բարձրանալով Փոքր Արարատի վրայ՝ արտագրել է այդ արձանագրութիւնները, որոնք վերաբերում են 1774 թ.։ (Այստեղ հետևում է Երևանի տափարակի և Արարատի հրաբխային յատկութիւնների գիտական նկարագրութիւնը)։

Նախնական զննութիւններից յետոյ Ա. Իվանօվսկին գալիս է Էջմիածին, ուր ժամադիր էր հանդիպելու Մ. Նիկօլսկիին. այստեղից նրանք միասին դիմում են դէպի Բլուր (հին Արմաւիր), որի աւերակների մէջ հայերը տեսնում են իրանց հնագոյն մայրաքաղաքը, և ապա Իգդիրի վրայով հասնում են Տաշբուռուն, ուր Նիկօլկին գրաւում էր Մենուա թագաւորի բևեռագիրը։ Նիկօլսկին զբաղվում է դրա ուսումնասիրութեամբ. իսկ Իվանօվսկին ձեռնամուխ է լինում պեղումների Բլրի վրայ, որ յիշեալ արձանագրութեան հանդէպն է։ Մեծ Արարատի ստորոտում գտնվում է մի փոքր ամրոց 25 սաժէն երկայնութեամբ և 12 լայնութեամբ. շուրջը պատ է՝ տաշուած քարերից։ Հարաւային կողմից՝ ամրոցի ամբողջ լայնութեամբ փորուած է մի խրամ, որ ունի $1^{1}/_{2}$ սաժէն լայնութիւն և մէկ սաժէն խորութիւն։ Ամրոցը միջում տրոհուած է եօթը բաժանմունքի, որոնցից ներքին բաժինները հաղորդվում են ուրոյն անցքով 1 սաժէն լայնութեամբ։ Կատարուած պեղումներից երևաց, որ պարիսպները երկու սաժէն խորութեամբ նստած են հողի մէջ (Նկար ու մակարդակ № 21)։ Գտնուած իրեղէններն են մի թոնիր, կարաս, որի նմանը մինչև այժմ էլ գործածական է հայերի տանը, մի քանի ապակեայ ուլունք, որոնցից դժուար է գուշակել շինութեան ժամանակը։ Այստեղից Ա. Իվանօվսկին պեղումները փոխադրում է Տաշբուռունից դէպի արևելք այն իսկ վայրը, ուր, բնակիչների ցուցումներով, կանգնած է եղել Մենուա թագաւորի բևեռագրի քարը, որը երկար ժամանակ մի հայի տանը հաւանգի դերն է կատարել աղ ծեծելու համար. քարը, յայտնի բան է, խլվում է նրանից յօգուտ գիտութեան։ Պեղումները երևան հանեցին մի ահագին շէնք 13 սաժէն երկայնութեամբ և 9 սաժէն լայնութեամբ (տես մակարդակ № 22, էջ 39). շէնքի պատերը կազմուած են երկու շարք խորանարդ քարերից. իւրաքանչիւրի կողմը հաւասար է մի կանգունի. պատերը չորս կանգուն խորացած են գետնի մէջ։ Ամբողջ շէնքը բաժանուած է ութը սենեակների, որոնք հաղորդակցում են միմեանց հետ մի կանգուն լայնութեամբ անցքերով։ Յատակը սալայատակած է 8 վերշօկ երկարութիւն և 6 վերշօկ լայնութիւն ունեցող աղիւսներով, որոնց երեսը գեղեցիկ կերպով ողորկած է և խաչաձև սև փոսիկներ անցուած։ Աղիւսները այն-

քան ամուր սերտուած են իրար, որ երբ պեղումների միջոցին սրբում էին յատակը հողից, նրանք հիանալի պարկէտի տպաւորութիւն էին գործում տեսնողի վրայ։ Իւրաքանչիւր սենեակում, երկու կանգուն բարձր յատակից, կան երկ-երկու լուսամուտներ, ճիշտ քարեայ խորանարդների մեծութեամբ։ Սենեակների անկիւններում դէպի հիւսիս շինուած են թոնիրներ $1^1/_2$ կանգուն տրամագծով։ Միւս սենեակների երկու անկիւններում կային մի կոյտ աղիւսներ, որոնք ակնարկում էին հնոցի ներկայութեանը։ Միջին սենեակի դռան աջ ու ձախ կողմերում գտնուած են երկու սիւներ $1^1/_2$ կանգուն բարձրութեամբ և երկու պատուանդան, ըստ երևոյթին, դրանց համար։ Դրանով վերջանում են 1893 թուականի պեղումները։

Հետևեալ 1894 թ. Ա. Իվանօվսկին ուղեկցում էին Մօնաստիրօվը, անդամ ընկերութեան «Общества Любителей Естествознанія, Антропологіи и Этнографіи» և Ստրօգօնօվի Նկարչութեան Ուսումնարանի վերջին դասարանի աշակերտ Շուվալօվը. բացի դրանցից Երևանում նրանց հետ միացել է Աշտարակի ուսուցիչ Մ. Մարգարեանցը, որ դեռ նախընթաց տարին ուղեկցելով Մ. Նիկօլսկուն՝ անգնահատելի ծառայութիւններ է մատուցել Իվանօվսկուն իբրև թարգման թէ այն և թէ այս ժամանակ։ «Հասնելով Տաշբուռուն,—գրում է Ա. Իվանօվսկին,—մենք զրկուեցինք Շուվալօվից, որ չդիմանալով կլիմային՝ այնպէս հիւանդացաւ, որ մենք հարկադրուեցինք նրան յետ ուղարկել Մօսկվա, իսկ նկարչի պաշտօնը ստանձնեց պ. Մօնաստիրօվը»։ 1894 թ. պեղումները սկսուել են 30 սաժէն հեռու անցեալ տարուայ փորուած շէնքից և երևան են հանել մի նոր շինութիւն, որի նշանակութիւնը յայտնի չէ (նկար № 23). շինութիւնը 7 սաժէնից աւելի էր երկայնութեամբ, խոր նստած պատերի հաստութիւնը $1^1/_2$ կանգուն. գտնուել են միայն կարասի բեկորներ։ Դրանից յետոյ կատարուել են մի շարք պեղումներ տասն սաժէն հեռաւորութեամբ անցեալ 1893 թ. պեղած շէնքից և գիտական արշաւանքի մեծագոյն ժամանակը հէնց այստեղ է անցել։ Եւ քանի առաջ էին գնում աշխատանքները, այնքան Ա. Իվանօվսկին համոզվում էր, որ ինքը գործ ունի փառաւոր շէնքի մնացորդների հետ. արդարև նա չէ սխալվում. շէնքը բացվում է. նրա երկայնութիւնը հասնում է համարեա թէ 15 սաժէնի. արևմտեան պատի երկայնութիւնը 9,3 սաժէն, լայնութիւնը երեք կանգուն և շարուած է բասայտի (базальтъ) խոշոր քարերից, լաւ տաշած խորանարդի ձևով, ոչ հաւասար մեծութեամբ։ Քարերը դրուած են երկու շարք, սերտ կցած առանց ցեմենտի։ Պատերի երեսը ներքուստ և արտաքուստ հարթ-հաւասար է (նկար № 24). արևելեան պատը կազմում է կիսաբոլորակ։ Այլ պեղումները, կատարուած՝ նոյն տեղերում 1200 քառակուսի սաժ. տարածութեան վրայ, ապացուցանում են, որ Տաշբուռունի մօտ թաղուած է մի ամբողջ քաղաք գեղեցիկ շէնքերով զարդարուած. (տես մակարդակ 31, նկարներ № 27, 28, 29, 30, 31, 32, 33՝ դրանց

մանրամասն նկարագրութեամբ)։ Քաղաքը շուրջբոլոր 10—12 վերստ պիտի լինի. Նրա շէնքերից այժմ մնարել են միայն ստորին մասերը, հողով ծածկուած $1^1/_2$ սաժէն բարձրութեամբ։ Խորանարդ քարերը դարեր շարունակ յափշտակուելով տարուած են զանազան տեղեր և գործ են ածուել իբրև շինութեան նիւթ, որ կարելի է միշտ հանդիպել գիւղերում ու աւաններում։ Քաղաքի կործանման պատճառներից մէկն էլ կարող էր լինել երկրաշարժը, որ հազուագիւտ երևոյթ չէր Հայաստանում, օրինակ 715 թ. և մանաւանդ 894 թ., երբ Երևանում և նրա շրջակայքում կորան 20,000 մարդ. ապա յայտնի է, որ երկրաշարժը կրկնուեց 1003, 1111, 1131, 1134, 1139, 1219, 1235 և 1283 թ., իսկ 1319 թ. սարսափելի երկրաշարժը աւերակ դարձրեց հին մայրաքաղաք Անին. Արարատի հրաբխային վիժումը կործանեց Արկուրի գիւղը և այլն։ «Մեր պեղած քաղաքը,—ասում է Ա. Իվանովսկին,—հարաւից, Արարատի կողմից, ինչպէս երևում է, պաշտպանուած է եղել մեծ ու փոքր ամրոցներով (տես էջ 37 և 38) ոչ հեռու Տաշբուռունից, բայց առանձին ուշադրութեան արժանի է իր չափերով մի ամրոց, Տաշբուռունից երեք վերստ հեռու դէպի արևելք. ճանապարհին, որ տանում է դէպի այդ ամրոցը, կան երկու փոքր ամրոցներ ևս (տես նկար № 34). մէկը, որ ճանապարհի կիսումն է, մի քարակոյտ բլուր է ներկայացնում։ Փորձառու աչքը իսկոյն կարող է նշմարել, որ այդ քարերից շինուած են եղել պատերը, որոնց մնացորդները հողի տակ շատ լաւ պահպանուել են։ Այս ամրոցը, որի տարածութիւնը 30 սաժէն է, մենք նոյնպէս պեղեցինք (տես նկար № 35)»։ Ապա հետևում են ամրոյներ № 36, 37, 38, մեծ ամրոցի տեսարանները № 39, 40, 41, 42.

Յառաջ քան Երևանի տափարակից հեռանալը, Ա. Իվանովսկին խօսում է 1894 թ. գտած բևեռագրի մասին, որ գնել է մի հայ Պապան Տէր-Աւետիսեանց (բնակիչ Զօլմաքչի գիւղի). հայ գիւղացին պատմել է նրան, թէ արձանագրութիւնը ինքը գտել է «Արին-բերդ» բլրի վրայ հողը հերկելիս՝ 15 տարի դրանից առաջ։ Բլուրը, որ թիւրքերէն կոչվում է Կանլը-Թէփէ, ընկած է $1^1/_2$ վերստ հեռաւորութեամբ Զօլմաքչի գիւղից դէպի հարաւ-արևելք, Արաքսի հովտի այն տեղում, ուր դուրս է գալիս Էյլարի կիրճը և ուր նոյնպէս գտնուեց բևեռագիր։ Բլրի հետազօտութիւնը համոզում է պարոնին, թէ դրա կատարում բերդի գոյութիւնը անխուսափելի է, վասն զի բևեռագիրը բերդի հետ միշտ սերտ կապուած է լինում, ուրեմն միմեանց ժամանակակից են դրանք (տես նկար № 43)։ Բևեռագրի քարը այժմ բերուած է Մոսկվա և գտնվում է Պատմական Թանգարանում։ Հեռանալով Երևանի տափարակից Ա. Իվանովսկին անցնում է Արփաչայի ձախ ափը, Կանլըջա գիւղը, որի ժայռերից մէկի վրայ կայ Արգիշտի Թագաւորի արձանագրութիւնը։ Սկսուած պեղումները արդիւնք չեն տալիս։

## IV

1894 թ., նախընթաց գլխում նկարագրուած պեղումներից առաջ Տաշբուռունի մօտ, Ա. Իվանօվսկին մի առ ժամանակ կանգ է առնում Էջմիածնում ներկայանալու և շնորհակալութիւն յայտնելու վեհափառ Հայրիկին այն սիրալիր գրութեան համար, որ նա ուղղել էր Մօսկվայի Կայսերական Հնագիտական Ընկերութեան ի պատասխան վերջինիս խնդրին՝ աջակցութիւն ցոյց տալ Ա. Իվանօվսկիին արշաւանքների միջոցին: Արտայայտելով իր խորին յարգանքը Ընկերութեան ձեռնարկած հետազօտութիւնների առթիւ հին Հայաստանի սահմաններում, կաթողիկոսը, ընդունելութեան ժամանակ, յայտնեց իր պատրաստականութիւն «միշտ, յամենայնի և իրանից կախեալ ամեն միջոցներով նպաստել բարձր յարգանքի արժանի Ընկերութեան, որ այնքան առաքինի և արթուն հսկող է հանդիսանում ռուսաց հնախօսութեան»: Խօսակցութեան միջոցին վեհափառը, ի միջի այլոց, յարեց, թէ անհրաժեշտ է հնախօսական հետազօտութիւնները Ռուսաց Հայաստանից փոխադրել նաև Թիւրքականը և յատկապէս Վանի շրջակայքը, որ իրան քաջ ծանօթ է շնորհիւ իր երկարամեայ պաշտօնավարութեան այնտեղ իբրև առաջնորդ: Ի դէպս արշաւանքի իրագործման Վանում, նա խոստացաւ օգնել նոյնպէս ըստ չափու կարողութեան և հաւաստիացրեց, թէ հայ բնակչութիւնը արժանաւոր կերպով կընդունէ ամեն տեղ արշաւանքը (էջ 62): Նոյն Էջմիածնում հ. Գալուստը (թղթակից-անդամ Մօսկվայի Հնագիտական Ընկերութեան) հաղորդում է Ա. Իվանօվսկիին, որ Թիւրքիայի Ալաշկերտում, ոչ հեռու ռուսաց սահմանից, կայ մի բևեռագիր, որ դեռ ևս չէ ընդօրինակուած ու հրատարակուած: Այդ տեղեկութիւնը հաստատում են մի Թիւրք և Սուրմալուի գաւառապետ Ա. Բօգուսլավսկին, որ ասում է, թէ շուտով Երևանից գալու է Իգդիրի վրայից անցնելու դէպի Էրզրում ռուս հիւպատոսութեան առաջին թարգման Ֆօն-Ցիմմերմանը. նա կարող է օգնել նրան: Արդարև թարգմանը ժամանելով Իգդիր և տեղեկանալով իրողութեան՝ ինքն է այցելում Տաշբուռունում Իվանօվսկիին, որ պեղումների հսկողութիւնը յանձնում է Մօնաստիրօվին ու Մ. Մարգարեանցին և Ֆօն-Ցիմմերմանի հետ ճանապարհ է ընկնում դէպի Բայազիտ:

Քաղաք հասնելով Ա. Իվանօվսկի ներկայանում է կուսակալին, որ խօսակցութեան ժամանակ հաղորդում է նրան, թէ Բայազիտի հին բերդի ժայռի վրայ մի ինչ-որ նոխազների նըկար կայ, բայց լուսանկարել արգելուած է այն: «Միւս օրը,— պատմում է ռուս գիտնականը,—ես ուղեկցութեամբ Ֆօն-Ցիմմերմանի, հիւպատոսի կաւասի և երկու զապթիէների՝ գնացի զննելու ժայռը». (տես հ. Ղ. Ալիշանի «Այրարատում» «Հին հեթանոսական քանդակ Պայազիտ». էջ 504): Ահա այս քանդակը Իվանօվսկին փոքրիկ լուսանկարի գործիքով գաղտնի հանում է

(տես Նկար № 44, 45, 46)։ Այստեղ գալիս է մանրամասն նկարագրութիւն բերդի, որ յիշեցնում է Վանի բերդը իր զանազան գաղտնի սենեակներով։ Միւս օրը, երբ Իվանովսկին պատրաստվում էր շարունակել իր ճանապարհը դէպի Ալաշկերտ, նրան կալանաւորում են՝ զապթիէների խօսքով, և հրաման է ստացվում Էրզրումի վալիից՝ բանտարկուած պահել նրան մինչև ցնոր տնօրինութիւն Բարձր. Դռնից։ Բայց ռուս գիտնականը, տեղական պարսից հիւպատոս Միրզա-Մահմեդ խանի աջակցութեամբ, փախչում է Մակուի խանութեան սահմանները և այնտեղից Երևան ու Տաշբուրուն, որտեղից, պեղումները աւարտելով, նա ուղևորվում է Կարսի նահանգը՝ դիտելու համար Սարիղամիշն ու նրա շրջակայքը, վասն զի այնտեղ գտնուել է Արգիշտի Թագաւորի յայտնի բևեռագիրը (այժմ պահվում է Կովկասեան Թանգարանում)։ Իգդիրից Ա. Իվանովսկին անցնում է Կողբ, Կաղզուան և Սարիղամիշ. Ջարուխչա գիւղից նա հարկադրվում է լեռնային շաւղով շեղուել դէպի հարաւային արևմուտք, Բալըք-գեօլի ուղղութեամբ, և հետազօտութեան է ենթարկում Կիւլիւճա, Ալիքէսա, Խարաբափարչանիս և Փարչանեսկալաչա գիւղերը, ուր սակայն պատմական և հնագիտական բանի չէ հանդիպում։ Հայոց Կողբ գիւղից ճանապարհը դէպի Կաղզուան տանում է Կաղզուանեան խոր կիրճով, որ բաժանում է անդրկովկասեան սարաւանդը Աղրիդաղի պարերից. կիրճը մի ճեղքուածք է ներկայացնում, որի յատակովն արևմուտքից արևելք սրընթաց հոսում է Արաքսը (Նկար № 48, 49՝ Կաղզուանի տեսարանը, 50՝ աղահանք Կաղզուանի մօտ)։ Կաղզուանի և Կարսի միջում ճանապարհորդը տեսնում է հին հայոց Բէշ-Քիլիսէ վանքը (Նկար 51), Տիկորը (որոնց մասին տես Ա. Երիցեանի յօդուածը «Труды V Арх. Съѣзда въ Тифлисѣ»)։ Դէպի Սարիղամիշ Իվանովսկին ձիով անցնում է Բայանսու գետակի ամայի կիրճով, հասնում է Պուրուտը և Գեչևան գիւղերը, ապա Ախ-Բաբա սարի վրայով Սարիղամիշ. վերջինիս և Կաղզուանի միջում նա հանդիպում է փոքր տաճարի, փորուած ժայռի մէջ. Գեչևանի մօտ նա զննում է մի բերդի աւերակները (Նկար 54, 55, 56, 57). վերջապէս Իվանովսկին և Մօնաստիրօվը դիմում են դէպի Կարս քաղաքը Կարս-չայի հովիտով, որ Վանեան շրջանի Թագաւորների ժամանակ նշանաւոր ռազմական ճանապարհ էր, ինչպէս այդ երևում է, բացի բևեռագրից ու բերդից Սարիղամիշի մօտ, նաև միւս ամրութիւններից, որոնք Կարսի ճանապարհին են։ Կարսից մեր ճանապարհորդը գնում է դէպի Չալդիր լիճը և նրա ափին Աղճա-Կալա գիւղի մօտ պեղումներ է կատարում հին բերդի աւերակներում, որոնք ուրարտական ժամանակից են մնացել (տես Նկար № 64, Կարսի տեսարանը № 62, Չալդիր լիճը № 63. Նրա մօտի բերդինը 65 և 68, 69. և այլն)։

1896 Թ. Ա. Իվանովսկին արդէն երրորդ անգամ գնում է Անդրկովկաս և Գանձակի նահանգում, յատկապէս Գետաբեկի, Կարա-Մուրադի, Կարա-Բուլախի և Կալաքենտի միջում երկար

պեղումներ է կատարում և դուրս է բերում ճոխ հնութիւններ 72 քարէ արկղներից և գերեզմաններից, որոնց նկարագրութեանը նա նուիրում է 51 էջ (89—140)։ յետոյ Գեօկ-չայ լճի ափերում նա փորում է ու բացում է դարձեալ մի քանի գերեզմաններ և ընդ ամենը 91 հատ։ Ինչպէս Վալդեմար Բելկը, այնպէս և Ա. Իվանովսկին գերեզմաններից մի քանիսը թալանուած են գտնում, բայց այնուամենայնիւ Ա. Իվանովսկիի Մոսկվա բերած իրեղէնները շատ թանկագին են և բազմաթիւ։ Մեզ վիճակուեց տեսնել այդ բոլորը Պատմական Թանգարանում։ Դրանք 300-ի չափ են, և մի առ մի յիշելն անհնարին, ուստի շատանանք մի քանիսի անունը միայն տալով։ Բրօնզէ (անագապղինձէ) սրրեր, դաշոյններ, բրօնզէ գօտիներ, բրօնզէ զանազան տեսակ և մեծութեան ապարանջաններ, բրօնզէ մատանիներ, օղեր ու օղակներ, բրօնզէ սլաքներ, նետեր, ունելիքներ, նիզակներ, գեղարդներ, դանակներ, բրօնզէ կենդանիներ՝ այծեամներ. քարէ յեսաններ, բրօնզէ հայելիներ, թիթեղներ, աբսիթաքարից սլաքներ, բրօնզէ նուրբ ժապաւէններ՝ իբրև գլխազարդ. բրօնզէ նրբագոյն խողովակներ, ծարրաքարից կոճակներ, բրօնզէ շրջանակներ, բրօնզէ երեք փետուրներով նետեր, բրօնզէ մախաթներ, ասեղներ, ամփոլաձև ամաններ սև կաւից, սափորներ պէս-պէս տեսակներից, և զանազան մեծութեան՝ քարէ բազմաթիւ ամաններ, բրօնզէ ամաններ, բրնօզէ կովի գլուխ, սափոր գեղեցիկ նկարներով և շինուած կարմիր կաւից, փխրաքարից շինուած հաւանգներ, խեցեղէն խոր պնակներ, մոխրագոյն քարից վազաներ, սև կաւից գաւաթներ, բրօնզէ մահակներ, էլիպսակերպ առարկաներ, զարդարուած՝ ոսկով, փղոսկրով և սատափով և այլն։

Վերջացնելով մեր երկար մատենախօսութիւնը՝ մենք չենք կարող չարտայայտել այստեղ մեր երախտագիտութեան խորին զգացմունքը օտարազգի գիտնական Մառին, Մակլէրին, Վ. Բէլկին, Նիկօլսկիին և Իվանովսկիին, որոնք ուսումնասիրելով Հայաստանի հնութիւնները՝ մեզ համոզում են յարգել մեր անցեալ կուլտուրական կեանքը։

Մ. ՇՈՎՐԵԱՆ

---

Խմբագիր-հրատարակիչ Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

Տպարան «Է Պ Օ Խ Ա», Գանօվսկայա № 3.

# ՆՈՐ ՍՏԱՑՈՒԱԾ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Հայ սովորութական իրաւունքը (*Հին հայոց իրաւունքը և նրա հետազօտութեան մեթօդը, առևանգմամբ և գնմամբ ամուսնութիւն*), *Խ. Սամուէլեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 101, գ. 50 կ.։*
2. Родство грузинъ съ испанцами, по древнимъ источникамъ, Л. М. Меликсетъ-Бекова, Тифлисъ, 1911 г., ст. 38, ц. 25 к.
3. Բեն-Հուր, *վէպ քրիստոնէութեան առաջին օրերից,* Lewis Wallace-*ի, թարգմ. Տիրայր վ.-ի, Թիֆլիս, 1911 թ., էջ 415, գ. 1 ր.։*
4. Ամենքի համար Աստուած մէկ է, *Լ. Ն. Տոլստոյի, թարգմ. Լ. Դանիէլեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 16, գ. 5 կ.։*
5. Քոյրերը, *Լ. Ն. Տոլստոյի, թարգմ. Լ. Դանիէլեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 16, գ. 5 կ.։*
6. Կեանքի կայծկլտոսկոպ (*Ա. տետրակ*), *Գ. Տէր-Ղևոնդեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 40, գ. 8 կ.։*
7. Զգուանքներ, *Գր. ա.-ք. Մանդակունու, Թիֆլիս, 1911 թ., էջ 40, գ. 20 կ.։*
8. Пятна крови и другіе разсказы, В. Папазьяна, переводъ съ армянскаго Н. Багатуровой, съ предисловіемъ Ю. Веселовскаго, Москва, 1911 г., ст. 99, ц. 10 к.
9. Օրմանեանը գրպարտութեան ցանցերում, *Թիֆլիս, 1911 թ., էջ 169, գ. 30 կ.։*
10. Епископъ Карапетъ Теръ-Мкртчянъ, краткій біографическій очеркъ, составилъ свящ. Стефанъ Папаянъ, Нахичевань-Донъ, 1911 г., ст. 8, ц. 5 к.
11. Աւետիս Ղուկասեան եւ նրա կտակը, *Գիւտ Աղանեանց ա.-ք.-ի, Թիֆլիս, 1911 թ., էջ 56, գ. 25 կ.։*
12. Երուանդ վ. Տէր-Մինասեանի պատասխան, *գրեց Եղիա վ. Հասան-Ջալալեանց, Թիֆլիս, 1911 թ., էջ 66։*
13. Երկիւղն ու անվեհերութիւնն սկզբնական դաստիարակութեան ժամանակ, *Կապտերեվի, փոխադր. Մ. Ասիլեանց, Թիֆլիս, 1911 թ., էջ 65—128, ծրի յաւելուած «Հասկեր» ամսագրի։*

14. Տաճար շաբաթաթերթի № № 22, 23, 24, 25, 26, 27, 28, 29 և 30. Կ. Պոլիս, 1911 թ.։
15. Արագած պատկերազարդ շաբաթաթերթի № № 6, 7, 8, 9, 10, 11, 12 և 13. Նիւ-Եորկ, 1911 թ.։
16. Կոչնակ շաբաթաթերթի № № 25, 26, 27, 28, 29, 30 և 31. Նիւ-Եորկ, 1911 թ.։
17. Հայկունի, նորահասներու կիսամսեայ հանդէսի № № 13, 14 և 15. Մարզուան, 1911 թ.։
18. Ծանր կիսամսեայ հանդէսի № № 2 և 3, 1911 թ., Կ. Պոլիս։
19. Աղբիւր ամսագրի, № 5—6, Յաւերժ յիշատակ ազգային դաստիարակ-բանաստեղծ Ղազարոս Աղայեանին, Թիֆլիս, 1911 թ.։
20. Աղբիւր ամսագրի № 7—8, Թիֆլիս, 1911 թ.։
21. Armenia ամսագրի յունիսի և յուլիսի №-ները, Նիւ-Եորկ 1911 թ.։
22. Տարազ պատկերազարդ հանդէսի № 7—8, Թիֆլիս, 1911 թ.։
23. Հասկեր ամսագրի № 6—7-ը, Թիֆլիս, 1911 թ.։
24. Լումայ ամսագրի № 1—2 (յուլիս-օգոստոս), Թիֆլիս, 1911 թ.։
25. Փարոս ամսաթերթի № № 3—4 և 5, Պարտիզակ, 1911 թ.։
26. Բազմավէպ ամսագրի № 7, Վենետիկ, 1911 թ.։
27. Արարատ ամսագրի № № 6 և 7, Էջմիածին, 1911 թ.։
28. Ոստան եռամսեայ մեծ պարբերագրի № 3-ը, Կ. Պոլիս, 1911 թ.։
29. Նախահաշիւ 1911 թ. Մայր-Աթոռի և Նրան ենթակայ բոլոր հաստատութիւնների, Վաղարշապատ, 1911 թ., էջ 73.
30. Միացեալ Ընկերութիւնք Հայոց, վարժարանք, դպրոցական տարեշրջան 1910—11 թ., Կ. Պոլիս, 1911 թ., էջ 21.
31. Նոր-Ջուղայի Ազգ. Կենտրոնական, Գ. Քանանեան և Ս. Կատարինեան երկսեռ դպրոցների 1910—11 ուս. տարուայ կրթական և տնտեսական վիճակի տեղեկագիրը, Ջուղա-Սպահան, 1911 թ., էջ 47.

ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

ՆԵՐԿԱՅ 1911 ԹՈՒԱԿԱՆԻ

# II ՏԱՐԻ „ԱՐՕՐ" II ՏԱՐԻ

## ԸՆԴՀԱՆՈՒՐ-ԳՐԱԿԱՆ, ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ, ԳԻՏԱԿԱՆ, ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԵՒ ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ

## Ա Մ Ս Ա Գ Ի Ր

*«ԱՐՕՐԸ» հրատարակվում է Թիֆլիսում խմբագրութեամբ Հ. Առաքելեանի և աշխատակցութեամբ ռուսահայ, թիւրքահայ և պարսկահայ գրողների։*

*«ԱՐՕՐԻՆ» աշխատակցում են՝*

*Աթանասեան Ա., Այպօյաճեան Ա., բժշկ. Աղասարեան Բ., Աշըրուշան, բժշկ. Արծրունի Վ., Առաքելեան Արշակ, Աթաբէգեան Մ., Բաբգէն եպիսկոպոս Կիւլէսէրեան, Բաշալեան Լևոն, Բաշինջաղեան Գ., Բաբայեան Խ., Գասպարեան Յարութիւն, դոկտոր Գրէնֆիլդ Ջէմս, Դանիէլեան Լ., Դր. Գուբերնատիս Անջէլօ (սենատոր, իտալական պրոֆէսոր), Եզեկեան Ա., Եսայեան Ս., Էմմանուէլ ք. Նազարեան., Թէքէեան Վ., բժշկ. Թիրեաքեան Յարութիւն խան, Խանազատ Ռ., Խուրշիդ, Կալխաս, Կրասիլնիկեան Կ., Ղուլեան Ա., Մալխասեան Ս., Մալխազեան Ա., Մակլէր Ֆ. (ֆրանսիացի հայագէտ), Մեսրոպ ք. Մելեան, Յարութիւնեան Ի., Նաթանեան Միք., Նազարէթեան Ա., Նամալեան, բժշկ. Շահբազեան Ա., բժշկ. Շխեան Ա., Շահրիար, Շաւարշ, Չալխուշեան Գ., Չախմախսազեան Յ., Սարուխան Ա., Սուրխաթեան, Սամուէլեան Խ., Սպենդիարեան Յ., պրոֆէսոր Վեսելօվսկի Ի., Տէր-Մինասեան Ե., Րօֆֆօր Ստ., Քալանթար Ա.։*

*«Արօրի» բաժանորդագինն է «Մշակի» բաժանորդների համար 4 ր.։ Ոչ-բաժանորդները վճարում են 2 ր. աւելի։*

*Դրամ և թղթակցութիւն ուղարկել այս հասցէով՝*

Тифлисъ, редакція журнала „АРОРЪ".

Tiflis, Rédaction de la revue arménienne «Aror».

*Թիֆլիս, «Արօր» ամսագրի խմբագրութիւն*

Խմբագիր-հրատարակիչ՝ Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

# ԱՐՕՐ

## ՄԻԱՄՍԵԱՅ ՀԱՆԴԷՍ

ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՐԱԿԱՆ, ԳԻՏԱԿԱՆ-ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ
ԵՒ ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ.

II ՏԱՐԻ | II ՏԱՐԻ

ՍԵՊՏԵՄԲԵՐ

№ 9

1911

ԹԻՖԼԻՍ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Գրական
ԳԻՏԱԿԱՆ
Հասարակական-
ՔԱՂԱՔԱԿԱՆ
խաղաղասիր.
ՀԱՆԴԷՍ

# ԱՐՕՐ

ԵՐԿՐՈՐԴ տարի
ԹԻՖԼԻՍ
1911 թ.
ՍԵՊՏԵՄԲԵՐ
№ 9

# ՈՃՐԱԳՈՐԾԸ

---

*Դատարանի կողմից նշանակուած պաշտպանի ճառից յետոյ՝ վերջին խօսքը տրուեց մեղադրեալին։*

*Մեղադրեալը բարձրացաւ տեղից։*

*Նա մի բարձրահասակ, նիհար, 35 տարեկան, բայց արդէն ծերութեան և վշտի դրոշմը ճակատին տղամարդ էր։ Խօսելիս նա շարունակ շնչասպառ էր լինում, հազում, մերթ ընդ մերթ դադարեցնում պատմութիւնը և նորից սկսում։*

*
* *

*Պարոնայք դատաւորներ,—այսպէս սկսեց նա։— Ձեր կողմից նշանակուած փաստաբանը իր երկար, կրակոտ ճառով ճգնում էր ապացուցանել, որ ոճրագործութիւնը ժառանգական մի ախտ է, որը անցնելով սերնդից սերունդ՝ կրծում է ժամանակակից մարդկութեան սիրտն ու հոգին։ Նա աշխատում էր ժառանգականութեանը վերագրել իմ ոճրագործութիւնը և դրանով թեթևացնել մեղքս։ Ես չեմ հետևի նրան, չեմ աշխատի թեթևացնել իմ մեղքը, որովհետև նա ակնյայտ է, և, բացի այդ, չեմ էլ ցանկանում ազատուել պատժից կամ բանտից... Ինչո՞ւ համար պէտք է ցանկանամ այդ, քանի որ ես գնալու տեղ չունեմ և ոչ էլ ուտելու հաց... Կինս ու որդիքս տանը քաղցած՝ դռնէ դուռ են ընկած, ինձ դատապարտեալիս ոչ ոք գործ չի տայ անելու, և ես ստիպուած պիտի լինեմ քաղցած մեռնել, կամ թէ նորից գող կամ մարդասպան դառնալ՝ քաղցս յագեցնելու համար... Իսկ բանտում, փառք Աստուծոյ, ես ունեմ*

տաք անկիւն և մի կտոր հաց, որը թէև ազատութեան սովոր մարդուս համար դառն է, բայց և այնպէս յագեցնում է իմ քաղցը…

Ես էլ, այո, կար ժամանակ, որ մի ազնիւ մարդ էի, որը աշխատում էր իր սեփական, ազնիւ աշխատանքով ապահովել իր և իր ընտանիքի ապագան։ Ես էլ աշխատում էի, ուտում, խմում, զուարճանում իմ ընտանիքի շրջանում. ունէի ընկերներ, շրջան. տարուած էի բարձր գաղափարներով, իդէալներով… Ես էլ աշխատում էի իմ չնչին ոյժերը նուիրել ընդհանուր մարդկութեան երջանիկ ապագայի համար տեղի ունեցող կռուին։

Ընկերներս չափից դուրս սիրում ու յարգում էին ինձ և ամեն բանում հետևում իմ խորհուրդներին՝ իբրև մի աւելի փորձուած, աշխարհ տեսած մարդու։ Օրուայ չարքաշ աշխատանքից յետոյ, ծխից ու մրից սևացած գործարանի չորս պատերի մէջ, մենք հաւաքվում էին երեկոները միասին, խօսում, վիճում, ապագայի համար ծրագիրներ կազմում և յետոյ ուրախ, երջանիկ ցրվում մեր տները, գիշերուայ միւս մասն էլ մեր ընտանիքների հետ անցկացնելու համար։

Այսպէս անցան շատ տարիներ։

Վրայ հասան ազատագրական շարժման օրերը։ Բանուորներից, այդ սեփականազուրկ պրօլետարների առաջապահ գընդից, շնորհիւ իր գիտակցութեան, պահանջվում էր լարել իր ամբողջ ոյժերը և, առանց իր կեանքը ափսոսալու, նետուել երջանիկ ապագայի համար մղուող կռուի ասպարէզը։ Եւ նրանք, առանց երկար մտածելու, մոռանալով տուն, տեղ, ընտանիք, նետուեցին այդ կռուի մէջ։

Մեր ընկերները պատիւ արեցին ինձ՝ իրանց առաջնորդը ընտրելով, և ես հպարտ էի այդ պատուով, ուրախ՝ ընկերներիս դէպի ինձ ունեցած հաւատով՝ և երջանիկ, որ ինձ էլ վերջապէս վիճակուեց ընդհանուր գործին նուիրել իմ ոյժն ու եռանդը։ Ես մոռացայ ամեն ինչ՝ և տուն, և ընտանիք, և երեխաներ՝ ու ամբողջովին տարուեցի իմ նոր պաշտօնով…

Ընկերներս կոտորվում, բանտարկվում էին, միմեանց ետևից մեռնում, բայց ես ազատ էի ինչպէս թռչուն, անվախ՝ ինչպէս առիւծ։ Ես չէի վախենում մահից… Ա՜խ, եթէ այդ ժամանակ ես մեռնէի…

Բայց ես չմեռայ։

Ինձ աւելի դժբախտ ապագայ էր սպասում, ոճրագործի ապագայ։

Ամեն ինչ վերջացաւ։ Ազատագրական շարժումը վիժեց։ Վերահաս ռէակցիայից թև առած գործարանատէրերը սկսեցին ամեն կերպ ճնշել մեզ, և մի քանի ամիս չանցած՝ բանուորների մի ստուար խումբ գործարաններից փողոց նետուեց առանց մի կտոր հացի, առանց աշխատանքի։

Դրանց թւումն էի նաև ես։

Բայց մենք չընկճուեցինք. նոր եռանդով մենք սկսեցինք գործ, աշխատանք փնտռել մեր գոյութիւնը պահպանելու համար. սակայն ո՞վ գործ կը տար մեզ, ո՞վ կընդունէր իր գործարանում մեզ պէս վնասակար էլեմենտների... Մենք ծախսեցինք մեր ունեցած բոլոր փողերը, երկար ժամանակ ապրեցինք մեր ընկերների օգնութեան շնորհիւ. բայց այդ երկար շարունակուել չէր կարող։ Մեր ընկերների օրական վարձը օրէ-օր պակասում էր, և նրանք հազիւ էին կարողանում պահպանել իրանց գոյութիւնը, ուր մնաց որ մեզ էլ օգնէին։

Անգործ ընկերներիցս շատերը այս ու այն քաղաքները գնացին որևէ գործ գտնելու համար։ Բայց ես մնացի։ Անհագին ընտանիքի լուծը վզիս՝ ես ոչ մի տեղ չկարողացայ գնալ և քաղցած, ձեռս ծոցիս՝ մնացի տեղս նստած։ Օրերով մենք ուտելու հաց չէինք ունենում, և իմ սիրտս կտրատւում էր տեսնելով ընտանիքիս խեղճ դրութիւնը։ Կինս առաւօտուանից մինչև երեկոյ աշխատում էր. լուացք էր անում, չնչին օրավարձով աշխատանքի էր գնում հարուստների տները, որպէս զի դրանով մեր ցամաք հացի փողը գոնէ աշխատէր. իսկ ես տեսնում էի այդ բոլորը, և սիրտս կտրատւում էր, մաս-մաս լինում. բայց ինչ կարող էի անել, քանի որ ձեռքովս ոչինչ չէր գալիս...

Այդպիսի անելանելի դրութեան մէջ էինք մենք երկար ժամանակ, մինչև որ իմ գլխում մի բախտաւոր միտք ծագեց։

Մեր տնից ոչ այնքան հեռու՝ գետնի վրայով խողովակներ էին ձգուած, որոնցով նաւթը գործարաններից քաղաք էր տեղափոխւում։ Ես վճռեցի օգտուել այդ նաւթից, կարճ ասած՝ գողանալ նրան և ծախել։

Առանց երկար մտածելու՝ ես ձեռք բերի ծակելու գործիք, և մի գիշեր, ամբողջ երեք ժամ աշխատելուց յետոյ, ինձ աջողուեց ծակել խողովակներից մէկը, որի միջից նաւթը սկսեց շատրուանի պէս դուրս ցայտել։ Եւ այնուհետև՝ ամեն գիշեր մի քանի դոյլ վերցնում էի ես այդ նաւթից, իսկ յետոյ փայտով ծածկում բացուածքը, որպէս զի ոչ ոք չնկատէ։ Գողացած նաւթը ես ծախում էի խանութպանների վրայ և այդպիսով հայթայթում մեր ապրուստը։

Եւ ես սկսեցի այնուհետեւ գողութեամբ պարապել։

Եւ ինչո՞ւ չգողանայի, քանի որ տեսնում էի, որ տասնեակ, հարիւրաւոր մարդիկ նոյնն են անում աւելի մեծ չափերով և ազատ մնում... քանի որ տեսնում էի, որ տասնեակ «հասարակական գործիչներ»՝ հասարակութեան իրանց հաւատացած փողերն են կլանում և ազատ մնում... Ես տեսնում էի այդ բոլորը և, դրանից սիրտ առած, շարունակում իմ գողութիւնը։

Ճիշտ է, շատ անգամ սրտիս ձայնը ասում էր ինձ՝ «դու գող ես, դու գողանում ես ուրիշի սեփականութիւնը...», բայց մի ուրիշ աւելի ուժեղ ձայն՝ սրտիս խորքից պատասխանում էր նրան. «Այդ ուրիշի սեփականութիւնը չէ... Այդ քո և քեզ պէս հազարաւորների աշխատանքի գողացած արդիւնքն է... Դու գող չես, դու պարտաւոր ես հոգալ քո ընտանիքի ապրուստը...»։ Եւ այդ ձայնը քանի գնում՝ աւելի ու աւելի ուժեղանում էր, ընդգրկելով իմ ամբողջ էութիւնը, և ես ենթարկվում էի նրան...։

Այնուհետեւ մեր ապրուստը բաւականին լաւացաւ. մենք դարձեալ սկսեցինք տաք կերակուրի երես տեսնել, դարձեալ սկսեցինք մեր կիսամերկ մարմինները ծածկելու համար շորեր ունենալ... Եւ այդպէս երկար կը շարունակուէր, եթէ մի դժբախտ դէպք վերջ չտար այդ բոլորին։

Մի գիշեր, սովորական գործիս ժամանակ, իմ ետեւում մի ձայն լսեցի և, գլուխս բարձրացնելով, տեսայ կողքիս կանգնած, մերկ սուրը ձեռքին, գործարանի լեզգի պահապանին։ Արիւնը գլուխս զարկեց, աչքերս մթնեցին, և ես՝ մի ոստիւն գործելով՝ վեր թռայ տեղիցս, գետին գլորեցի պահապանին, խլեցի ձեռքից սուրը և մխեցի կրծքի մէջ... Այնուհետեւ իմ առաջին մտածմունքն էր փախչել, ազատուել։ Բայց արդէն ուշ էր։ Վերջին շունչը փչող պահապանի ձայնից վրայ էին հասել ատրճանակներով և մերկացրած սրերով զինուած մի քանի ուրիշ պահապաններ և շրջապատել ինձ չորս կողմից։ Հակառակելը աւելորդ էր...

Ձեռքս ու ոտքս կապոտելով՝ ինձ տարան ոստիկանատուն, իսկ այնտեղից ուղիղ բանտ։ Եւ ահա այսօր՝ երեք ամսուայ բանտի կուշտ, հանգիստ կեանքից յետոյ, կանգնած եմ ձեր առաջ։

Ես գթութիւն չեմ հայցում ձեզանից, պարոնայք դատաւորներ, յիշելով որ բանտի պատերից դուրս ինձ սպասում է դարձեալ աղքատութիւն և գուցէ մի նոր ոճրագործութիւն...

Ես մի բան եմ միայն խնդրում ձեզանից. Թոյլ տուէք կեանքիս մնացած, կարճատեւ օրերը անց կացնեմ բանտում, աշխարհի ցաւերից ու վշտից հեռու, որովհետեւ ես զգում եմ, որ ինձ այլ եւս շատ քիչ է մնացել ապրելու. սրտամաշ թոքախտը արդէն խոր արմատներ է ձգել կրծքիս մէջ... Թոյլ տուէք գոնէ վերջին օրերս անց կացնեմ հանգիստ ու անվրդով...

Ահա այս է խեղճ, իր օրուայ ապրուստը ազնիւ աշխատանքով հայթայթել երազող բանուորի վերջը՝ մեր այս ցաւ ու վշտով լի աշխարհում...

Ես վերջացրի։

* *

Կարճատեւ խորհրդակցութիւնից յետոյ, դատարանը որոշեց մեղադրեալին մի տարուայ բանտարկութիւն...

ՎԱՂ. ԹՈՒՄԱՆԵԱՆ

## ԱՇՈՒՆ

Երկընքի վըրայով կըռունկնե՜րը
Սըգաւոր շարքերով հեռացա՜ն...
Օդի մէջ թախծօրէն դեռ հընչո՜ւմ են
Յուսաբեկ կըզգոցնե՜րը լալկան...
Դէպի ո՞ւր են գընում—չըգիտե՜մ ես,
Բայց գիտեմ, որ գընում են հեռո՜ւ,—
Վիրաւո՜ր, մահամերձ ձագուկները
Մի օտար աշխարհում թաղելու...

Ս. ՅՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ

# ՍԱՆԴՈՒՂ

(Կարլ Մօրի)

---

Մի անգամ սանդուղի աստիճանները իրար հետ վիճել սկսեցին։

—Տաժանակիր կեանք է,—գանգատուեց ներքևինը,—ինչ՞ր ասես որ ես չեմ կրում։ Ամեն մի փնթի սրբում է քեզնով իր ցեխոտ կօշիկները, աղտոտում է քեզ, լուացվում է քեզնով։

—Ոչինչ չի կարելի անել, սիրելի՛ս,—պատասխանեց նրան երկրորդ աստիճանը։—Միշտ այդպէս կը լինի, քանի աշխարհում կը լինեն սանդուղներ։ Նշանակում է՝ այսպէս է արդէն քո վիճակը։ Ճշմարիտ չէ՞, հարևանուհի,—դարձաւ նա երրորդ աստիճանին։

—Հարևանուհի՞,—բողոքեց վերջինը։—Ես քեզ ի՛նչ հարևանուհի։ Կամ թէ դու չե՞ս տեսնում, որ քեզանից ես բարձր եմ։ Քեզ հաւասարների հետ կարող ես խիստ ազատ լինել, այլ ոչ թէ ինձ հետ։

Չորրորդ աստիճանը, որի քունը հէնց այդ ժամանակ տարել էր, այդ ղալմաղալից արթնացաւ։

—Է՛յ դուք, խառնաղանջներ,—բղաւեց նա բարկացած,—չի՞ կարելի մի քիչ ցածր։ Ժամանակ է, որ իմանաք, թէ մենք ձեզանից բարձր ենք, և որ հարկ է և հուպ տալ լեզուներդ, երբ հանգստանում են մեծերը...

Բայց նրան այստեղ կտրեց հինգերորդ աստիճանը.

—Բերանդ շատ էլ մի բաց արա, աղաւնեակս։ Եւ մի մոռանա, խնդրեմ, որ ես եմ վերև, այլ ոչ դու։

—Ոչ, ես,—բղաւեց վեցերորդը։

—Լպստած։ Լի՛րբ,—հայհոյեց եօթերորդը։—Ներս խցկուեց օրինաւոր հասարակութեան մէջ և կարգադրում էլ է։

—Իսկ դու ինքդ ո՞վ ես,—կանչեց ութերորդը։—Լռի՛ր, թէ չէ՝ քեզ հետ ես կը խօսեմ։

—Ձեզ ինչպէ՞ս է դուր գալիս այդ տեսակ անձը,—դարձաւ իններորդը տասներորդին։—Ամեն մի անպիտան ներս է պըրծնում տիրուհի՛ լինելու։ Ես ատում եմ այդ յատմկը։

Բայց տասներորդը նրան ոչինչ չպատասխանեց։ Նոյնպիսի վեհանձնութեամբ լռել էին տասնմէկերորդ, տասներկուերորդ և տասներեքերորդ աստիճանները։

Եւ միայն սանդուղի ամենաբարձրից լսուեց վերջին աստիճանի հրամայողական ձայնը․

—Կարգը պահանջում է, որ իւրաքանչիւր աստիճան բարձըր լինէր միւսից, իսկ մէկը՝ բոլորից բարձր։

Եւ, աչքերը վերև բարձրացնելով առաստաղին, շարունակեց․

—Օ՜հ, ինչպէս ես շնորհակալ եմ հիւսնից, որ ինձ դրել է ձեր բոլորի՛դ վրայ։ Նայեցէք այստեղ և ասացէք․ դուք առանց ինձ ի՞նչ կը լինէիք, առանց գլխի։ Իսկ ես մի՞թէ ձեր գլուխը չեմ։

Աստիճանները ոչինչ չպատասխանեցին այդ հարցին։ Միայն մէկից դէպի միւսին հանդարտ շշուկ անցաւ։

Իսկ հին աւելը, որ կանգնած էր անկիւնում, սանդուղի տակին, ծիծաղից գլորուեց։

—Սպասեցէք, հոգեակներս, այժմ ես ձեզ բոլորիդ կը հաւասարեցնեմ։

Եւ բոլոր աստիճանների, ամենաբարձրից սկսած մինչև ամենացածրը, երեսներին երկու անգամ քսուեց։

ՅՈՎ. ԴԱՆԻԷԼԵԱՆՑ

# ԼԵՀ ԵՐԳԻՉՆԵՐ

## I

*(Մարիա Կոնոպնիցկայայից)*

*Ոչ այն ճամբան, այն ուղին է դժուարին,*
*Որ տանում է անյայտ մի վայր, մի երկիր,*
*Այլ այն՝ որով մնաս բարև իր բնին*
*Ասաց, անցաւ խեղճ թռչնիկը տարագիր...*
*Դժուարին է ոչ այն րօպէն, այն վայրկեան,*
*Երբ բերում են քո դագաղը... ու... լռում ես յաւիտեան,*
*Այլ այն րօպէն, երբ պէտք է լուռ բաժանուել*
*Նրանից, որին դու սիրել ես ու պաշտել...*

## II

*(Վիկտոր Գոմուլիցկիից)*

*—Ասա ինձ ճիշտը,—հարցրի ես սրտիս,—*
*Օ՜, սիրտ իմ, ասա, ինչո՞վ ես կենդան,*
*Ինչո՞վ ես ապրում...*
*Եւ սիրտս ասաց.—Սպասելով միայն,*
*Յոյսերով միայն,*
*Որ երջանկութիւն, բախտ է քեզ սպասում...*
*Հարցրի մտքերիս.—Ի՞նչպէս չհանգաք,*
*Զմարեցիք, մտքեր, կեանքի չարագոյն,*
*Փոթորկի գրկում, նրա անվերջ կռւում...*
*Նրանք ասացին.—Այրվում ենք, վառվում,*
*Դէպ ազատութիւն, դէպ բարին, դէպ սէր*
*Անտրտունջ ձգտում...*

*ԼԵՒՈՆ ԳՐԻԳՈՐԵԱՆՑ*

# «ԴՈՒՔ ՀԱՐԿԱՒՈՐ ՉԷՔ»

(Կ. Ստանիւկօվիչի)

## I

Ձմերային մի մռայլ առաւօտ, Վասիլեվսկայա կղզում, իր փոքրիկ բնակարանի առանձնասենեակում Ալէքսանդրա Նիկօլայեւնա Բալխօվսկայան նստած՝ եռանդով լցնում էր մի թերթ թուղթ թուերով։

Նա ծառայում էր երկաթուղու վարչութեան հարկերի հաշուետուութեան մասում և շտապում էր վերջացնել գործը, որպէս զի տօներից առաջ ռոճկի հաշուին փող խնդրէ։

Առաջ էին եկել անակնկալ ծախսեր։

—Մայրիկ, գիմնազիա գնալու ժամանակն է։

Եւ խոշոր, մուգ աչքերով մատաղահաս սիրուն աղջիկը պինդ համբուրեց մօրը։

Ալէքսանդրա Նիկօլայեւնան սիրալիր նայեց իր աղջկայ երեսին, ուշադրութեամբ զննեց նրա զգեստն ու կօշիկները և ասաց.

—Այս քանի օրերս, փոքրիկս, մենք կը գնանք և քեզ համար նոր կօշիկներ ու մուշտակ կը գնենք։ Այդ վերարկուով կը մրսես. չափազանց ցուրտ է։

—Ոչինչ, մայրիկ, գիմնազիան մօտ է։ Ես վազէ-վազ կը գնամ,—ասաց աղջիկը և կարեկցաբար աւելացրեց։—Բայց որտեղի՞ց փող կը գտնես, մայրիկ. չէ՞ որ ռոճիկդ արդէն ամբողջովին ստացել ենք։

—Կանխավճար կը ստանամ, Մարուսիա։

—Գուցէ այդ քեզ համար անախորժ է, մայրիկ. մենք աւելի լաւ է մուշտակ գնելուն սպասենք։

Ալէքսանդրա Նիկօլայեւնան մի առանձին քնքշութեամբ պինդ համբուրեց աղջկան և մայրական քաղցր ժպիտով պատասխանեց, որ իր համար աւելի հաճելին այն է, որ Մարուսիան չմրսէ։

—Ես գնում եմ… արդէն իննից քառորդ պակաս է։

Նախասենեակում մայրը գննեց աղջկայ կրկնակօշիկները, հագցրեց նրան բամբակէ վերարկուն, կրկին համբուրեց և կողպեց նրա ետևից դուռը։

«Ի հարկէ, Ուրժումցեվը կը թոյլատրէ»,—հանգստացնում էր ինքն իրան Բալխօվսկայան։ Ինքը կատարեալ իրաւունք ունի կանխավճար ստանալու իր ռոճկի հաշուին։

Ահա հինգ տարի է, ինչ Ալէքսանդրա Նիկօլայեվնան ծառայում էր վարչութեան գրասենեակում. նա գործում էր եռանդով, և կառավարիչը երբէք չի յանդգնի մեղադրել նրան անբարեխղճութեան մէջ։

Ցաւն այն է, որ Ուրժումցեվը սահմանափակ և ինքն իր վրայ սիրահարուած մարդ է. երևակայող, որ ինքը հանճարեղ ինժեներ է, բացի դրանից և՛ գեղեցիկ, որի վրայ սիրահարվում են բոլոր կանայք։ Մինչդեռ Ալէքսանդրա Նիկօլայեվնան չէր յափշտակվում նրանով, չէր ազդվում նրա խօսքերից և յաճախ թոյլ էր տալիս իրան՝ չհամաձայնուել նրա կարծիքների հետ։

«Բայց որքան էլ նա անյուսալի յիմար լինի, այնուամենայնիւ այնքան էլ անասուն չէ, որ մերժէ կանխավճար տալ ինձ»,—մտածեց Բալխօվսկայան։

Տօներից առաջ նրան փող շատ էր հարկաւոր, բայց նա ենթադրում էր, որ իր պէտքերը կը հոգայ, երբ կանխավճար և պարգևատրութիւն ստանայ։ Ու աւելի եռանդով էր հաշւում թուերը և չրխկացնում համրիչը։

Նա շատ էր ծանրաբեռնուած, բայց չէր յուսահատվում. նա աշխատում էր գրասենեակում ինչպէս եզ։ Ի զուր չեն մեծ ռոճիկ վճարում նրան. նա ստանում էր ամսական եօթանասունհինգ րուբլի, իսկ երեկոյեան պարապմունքների համար՝ յիսուն րուբլի։ Բացի դրանից՝ նա դասեր էլ էր տալիս։

Մի ժամանակ Ալէքսանդրա Նիկօլայեվնան գեղեցիկ, թարմ և աշխոյժ էր, մինչդեռ հիմա նա իր երեսուն-վեց տարիքի մէջ թւում էր աւելի պառաւած, հիւանդ ու նուաղ։

Բայց այդ, ըստ երևոյթին, յոգնած կնոջ երեսի վրայ կար ինչ-որ զուարթութիւն և կամակորութիւն։ Նրա չքնաղ աչքերի մէջ լուսաւորում էր խելք և եռանդ։ Երևում էր, որ նրան կոտրելը հեշտ չէ։

Ալէքսանդրա Նիկօլայեվնան ձգուեց, ուղղեց մէջքը և նայելով իր վերջին գրած թուերի վրայ՝ կնճռեց դէմքը ցաւից ու թեթև կերպով հառաչեց։ Այդ ժամանակ յանկարծ հնչեց

զանգակը, առանձնասենեակը մտաւ խոհարարուհին և, տալով նրան մի ծրար, ասաց.

—«Կուլեր (սուրհանդակ), Ալէքսանդրա Նիկոլայեւնա։

—Սպասո՞ւմ է։

—Ոչ, տիրուհի՛, գնաց։

Ալէքսանդրա Նիկոլայեւնան բացեց ծրարը, աչքի անցրեց նամակը և գունատուած, թուլացած ընկաւ բազկաթոռի վրայ։

—Բայց ի՞նչ է նշանակում սա,—շշնջաց նա խոր վշտի մէջ։

Եւ կարծես չհաւատալով հէնց նոր կարդացած նամակի խօսքերին՝ նորից կարդաց. «Դժբախտաբար ստիպուած եմ յայտնել ձեզ, որ, հարկերի հաշուետեսութեան կառավարչի հրամանի համաձայն, դուք յունուարի 1-ից հարկաւոր չէք»։

Նամակը ստորագրուած էր ընդհանուր գործերի կառավարչի ձեռքով, և նրա ձեռագրին լաւ ծանօթ էր Ալէքսանդրա Նիկոլայեւնան։

## II

Ալէքսանդրա Նիկոլայեւնան վրդովուած կրկնում էր.

—Զէ՞ որ ծառայի հետ անգամ հաշիւը այսպէս չեն վերջացնում։ Գոնէ նախազգուշացնէին։

Կէս ժամից յետոյ նա արդէն վարչութեան գրասենեակումն էր։

Բարձրանալով այն սենեակը, ուր պարապում էր ինքը, նա բարևեց գրասեղանի շուրջը նստած մի քանի օրիորդներին և մօտեցաւ բաց, խարտեաշ երես և խոշոր, կապոյտ աչքեր ունեցող երիտասարդ Ստրիժեվին և նայելով նրա ամօթահարուած, յանկարծակի հեռացուած հայեացքին՝ մտածեց, որ այդ պարոնը խառն է իրան վռնտելու գործում։

—Բարև ձեզ, Սերգէյ Ալէքսանդրովի՛չ,—ասաց նա, յուզուած, մեկնելով ձեռքը երիտասարդ պարոնին։—Այս ի՞նչ է նշանակում։

—Ի՞նչ, Ալէքսանդրա Նիկոլայեւնա,—իբր թէ չհասկանալով թէ ինչի՛ մասին է հարցնում դիմացինը՝ մեղմ, եղենային ձայնով խօսեց բլօնդինը և իր կապոյտ սիրուն աչքերով ուշադրութեամբ նայեց առջև ընկած թղթին։

Ալէքսանդրա Նիկոլայեւնան աւելի շուտ զգաց, քան հասկացաւ, որ այդ ընկերը ստում է։

—Դուք ոչի՞նչ չգիտէք։ Ես էլ հարկաւո՛ր չեմ։

—Մի՞թէ։ Բայց այդ անկարելի է, Ալէքսանդրա Նիկոլայեւնա։ Երևի որևէ թիւրիմացութիւն կայ։ Աւելի լաւ է՝ բացատրուէք Ուրժումցեվի հետ։ Բայց մի գուցէ վարչութեան նախագահն է այդպիսի մի հանաք արել։ Չէ՞ որ նա սիրում է նոր, երիտասարդ կանացի դէմքեր։ Գուցէ տեղաւորել է մի որևէ օրիորդի, որպէս զի սիրային ծախսերը ապահովէ պետութեան հաշուին։ Բայց կարող է պատահել նաև, որ ինքը Ուրժումցեվը ճարել է մի սիրուն, թխահեր օրիորդի։ Ա՜խ, Ալէքսանդրա Նիկոլայեւնա, այնքան էլ հաճելի չէ այստեղ ծառայելը,—աւելացրեց Սարիժեվը։

—Մի խօսքով դուք չգիտէք, թէ ինչու են ինձ վռնտում։

—Ազնիւ խօսք, չգիտեմ։ Ի զուր չէ Ուրժումցեվը տրամադրութեան մարդ, դրա վրայ աւելացրած...

Եւ ցածրացնելով ձայնը երիտասարդ պարոնը մատով ցոյց տուեց ճակատը և ասաց.

—Գիտէք ինչպիսի պտուղն է Ուրժումցեվը։

—Այնուամենայնիւ դուք, Սերգէյ Ալէքսանդրովի՛չ, շատ էք հաճոյանում «պտղին»,—չթագցուած, ծիծաղաշարժ հեգնութեամբ արտասանեց Բալխովսկայան, և նրա աչքերում փայլեց արհամարհանք։

—Ակամայ պէտք է յարմարուել, որքան էլ որ դա զզուելի լինի։ Աւելի լաւ է այստեղից շուտ հեռանալ։ Իսկ ձեզ, Ալէքսանդրա Նիկոլայեւնա, Ուրժումցեվը արդարև չի համարձակուի ուրիշ տեղ չտալ. չէ՞ որ նա գնահատում է ձեզ ինչպէս լաւ աշխատողի։ Բոլորն էլ մեզ մօտ գիտեն, թէ ինչպէս էք աշխատում։

—Եւ այնուամենայնիւ...

Ալէքսանդրա Նիկոլայեւնան դառն ծիծաղեց և վճռողաբար անցաւ մեծ սենեակով իր անմիջական կառավարչի առանձնասենեակը։

## III

Հաստլիկ, լայնթիկունք, բաւականին տգեղ, ճաղատ, տուժուրկա հագած ինժեները վեր կացաւ սեղանի մօտ դրուած բազկաթոռից և, ուղղելով նրան ձեռքը, հարցրեց.

—Ի՞նչ կը հրամայէք, Ալէքսանդրա Նիկոլայեւնա։

—Ահա այս թղթի համար...

—Ա՜խ, այո, մոռացել էի։ Դուք մի բարկանաք, տիրու-

հիս. ծառայութիւնը՝ ծառայութիւն, իսկ բարեկամութիւնը՝ բարեկամութիւն։ Նախագահը տնտեսութիւն է պահանջում։

—Ինչո՞ւ նա ինձ վրայ է բարձում այդ հոգսը։

—Ես ոչինչ չգիտեմ։ Նախագահը գտնում է, որ դուք մեծ ռոճիկ էք ստանում, և գտել է մի օրիորդի՝ երեսուն ռուբլի ռոճիկով։ Ես, ի հարկէ, ձեր կողմն էի, բայց դուք ճանաչում էք նախագահին. նա յամառ է ինչպէս ջորի։ Ցամենայն դէպս, Ալէքսանդրա Նիկօլայեվնա, անհանգիստ մի լինէք։ Ես կը խնդրեմ նախագահին, որպէս զի ձեզ դուրս անելու դէպքում տան երկու ամսուայ ռոճիկ, իսկ յետոյ կաշխատեմ տեղաւորել ձեզ մի որևէ տեղ։ Առ այժմ կը թողնեմ ձեզ վրայ երեկոյեան պարապմունքները։

—Եւ դա յիսուն ռուբլո՞վ։Ապա ինչպէ՞ս պէտք է ապրեմ աղջկաս հետ։ Մտածե՞լ էք այդ մասին,—գրգռուած ասաց Բալխօվսկայան։

—Ես, կարծեմ, թեթևամիտ մարդ չեմ և գիտեմ թէ որքան է հարկաւոր լինում մտածել ամենքի մասին։ Դուք ինձնից ակնկալութիւն չպէտք է ունենաք։ Առանց այն էլ ես մատների արանքով եմ նայել, երբ ուշ էիք գալիս ծառայութեան... Եւ արդէն առաջին անգամը չէ, որ ձեր շնորհիւ նկատողութիւններ եմ ստացել նախագահից։

—Բայց չէ՞ որ գործս չէի ուշացնում։ Գործում էի տանը։

—Իսկ ինձ կարող էին մեղադրել, որ ես պաշտպանում եմ ձեզ։ Գուցէ և ասէին, որ օգտվում եմ ձեր առանձին բարեհաճութիւնից։

—Մի՞թէ,—արտասանեց ծիծաղելով Ալէքսանդրա Նիկօլայեվնան՝ նայելով նրա լայն, պսպղացող և բութ, ճաղատ երեսին, որին գրասենեակի սրամիտները ծունկի էին նմանեցրել։

—Կարծեմ հասկանալի է։ Կանայք չեն թողնում ինձ առանց ուշադրութեան։

Եւ յաղթական կերպով աւելացրեց Ուրժումցևը.

—Ես մեղաւոր չեմ, որ հաճելի եմ կանանց և ազդում եմ նրանց վրայ իմ երևակայութեամբ, լցուած կախարդութեամբ, զգուանքով և երջանկութեամբ։

Չնայած բոլոր ճնշումներին, շփոթին ու ապագայի վախին, Ալէքսանդրա Նիկօլայեվնան խելագարի նման ծիծաղեց Ուրժումցևի երեսին։

—Ի՞նչ մի ծիծաղելու բան էք գտնում։ Դուք պաշտօնակից էք և կարծեմ կարող կը լինէիք հասկնալ ծառայողների

յարաբերութիւնները,—խիստ և ազդու կերպով ասաց Ուրժումցեվը։

Բալխօվսկայան ուղղակի հռհռաց։

—Ի զուր էք ծիծաղում։ Ես պատիւ չունե՞մ ձեզ դուր գալու։ Ի հարկէ ճաշակի բան է... Բայց ես կարող էի ապացուցել ձեզ, որ կատարեալ հիմք ունեմ դուր գալու կանանց։ Նրանք լաւ են ճանաչում ինձ և միայն լաւ հոգուս համար չեն սիրում ինձ։ Մի՞թէ չէք հասկանում՝ ի՞նչ բան է սէրը։ Դա ոչ միայն հոգի է, այլ և մի ինչ-որ կատարելապէս ուրիշ բան։ Ահա կը կարդաք, Ալէքսանդրա Նիկոլայեվնա, ես ազատ ժամերիս գրում եմ մի լուրջ յօդուած սիրոյ մասին։

—Բայց դուք կարծեմ մի՛ անգամ չէք պատմել այդ բանի մասին գրասենեակի օրիորդներին. ինձ որքան պատմեցիք՝ բաւական է։

—Բայց ինչո՞ւ էք բարկանում, Ալէքսանդրա Նիկոլայեվնա։ Ես չեմ բարկանում, որ դուր չեմ գալիս ձեզ, և խնդրում եմ հաւատալ, որ պէտք է նամակ ուղարկէի ձեզ վռնտման մասին առանց որևէ այլ մտադրութեան։

—Դուք դեռ համարձակ էք,—բարձրացնելով գլուխը՝ արտասանեց Ալէքսանդրա Նիկոլայեվնան և, հազիւ գլուխ տալով, դուրս եկաւ առանձնասենեակից։

## IV

Միևնոյն օրը Ալէքսանդրա Նիկոլայեվնան եկաւ գրասենեակ։

Նա դեռ յոյս ունէր, որ իրան կը թողնեն ծառայութեան մէջ։

Ուրժումցեվը կարող էր վախենալ պաշտօնակիցների բողոքից։ Նրանք կարող էին պաշտպանել Ալէքսանդրա Նիկոլայեվնային։ Չէ՞ որ նրանք պէտք է գրգռուէին Ուրժումցեվի վարքից և ցոյց տային նրա անիրաւութիւնը։

Օրիորդներից շատերը կարեկցութիւն էին յայտնում Ալէքսանդրա Նիկոլայեվնային, բայց դա թւում էր անկեղծութիւնից հեռու մի բան։ Լռում էին և երիտասարդները։

Միայն ծերուկ Արդալիօն Իվանովիչը, հաշուապահի օգնականը, որը սիրում էր թունդ խմել, պատահելով Ալէքսանդրա Նիկոլայեվնային, զգացուած և պինդ սեղմեց նրա ձեռքն ու ասաց.

—Խօսե՞լ էք Ուրժումցեվի հետ։

—Խօսել եմ...

—Փոխե՞լ է միտքը։

—Ո՛չ, այսօր բոլորովին հեռանում եմ։

—Գարշելի՜,—արտասանեց ծերուկը և աննետացաւ ինչ-որ տեղ։

Հինգ րօպէից յետոյ, բաւական կարմրած, նա վերադարձաւ ու մտաւ Ուրժումցեվի մօտ։

—Ներեցէք, Վասիլիյ Վասիլեվիչ... Ես մէկ-երկու խօսք ունեմ ասելու ձեզ։

—Ի՞նչ էք կամենում։

—Չէ՞ որ Ալէքսանդրա Նիկօլայեւնան գերազանց աշխատող է և իր գործը լաւ գիտցող։ Ուրիշ այդպիսիին չենք գտնի։ Նա լօդը (հայվարա) օրիորդներից չէ։ Մեզ համար էլ դժուար կը լինի, երբ Բալխօվսկայայի տեղ մի որևէ գեղեցիկ ցացա կը տաք։

—Դա իմ գործը չէ... Նախագահը...

—Է՛հ, ասենք, Վասիլիյ Վասիլեվիչ, բոլորը ձեզնից է կախուած։ Ասացէք նախագահին, և նա կը փոխէ իր վճիռը։

—Դուք երևի սիրահարուել էք Բալխօվսկայայի վրայ։ Այդ դէպքում հոգացէք նրա համար մի ուրիշ տեղ ճարելու։ Իսկ մեզ մօտ բարեգործական հիմնարկութիւն չէ։

—Հէնց այդ է, որ շատ օրիորդների համար բարեգործական է... Թէկուզ ձեր երկու հօրեղբօր դուստրների համար... Իսկ կարգին բանողին դուրս էք անում։

—Խնդրեմ ինձ յանդիմանութիւններ չանել։

—Ի՞նչ յանդիմանութիւններ։ Մենք ուղղակի խօսի պէտ ենք վարուել։ Լրագրի էջերը կընկնենք։ Եւ հէնց տեղն էլ է...

Ուրժումցեվը շատ էր վախենում լրագիրներից, ուստի և հարցրեց․

—Ո՞վ կարող է գրել այդպիսի մի պասկվիլ։

—Թէկուզ հէնց ես։ Կարծում էք ոչինչ չկա՞յ պատմելու։ Նոյն իսկ աւելի շատ, քան հարկաւոր է,—գրգռուած ասաց Արգալօն Իվանօվիչը։

—Երևի քէֆ կոնծել էք,—արհամարհական ժպիտով ասաց Ուրժումցեվը։

—Եւ կերել եմ, և խմել։ Բայց ինձ համար վիրաւորական է, որ չեմ հետևում Ալէքսանդրա Նիկօլայեւնային։ Չէ՞ որ ես այնպէս չեմ դուր գալիս կանանց, ինչպէս դուք։

Ուրժումցեվը գիտէր, որ Արգալօն Իվանօվիչը գիտուն և երևելի ծառայող է, ուստի թանկ էր գնահատում նրան և կառավարչական ատեանի նախագահը, և լաւ ճանաչում էր նրան

բաժնետէրերից մէկը, որը մեծ ազդեցութիւն ունէր կառավարչական ատեանի և մանաւանդ նախագահի վրայ։ Բոլորը գիտէին, որ ծերուկ օգնականը խմում է, բայց այդ բանի վրայ նայում էին մատների արանքով։ Այդ ի նկատի ունենալով, Ուրժումցեվը՝ թեթև ցածրացնելով ձայնը՝ ասաց.

—Ես կը խնդրեմ նախագահին... Միայն հաշիւ թէ... իսկ լրագիրների վրայ թքել եմ... Մի՞թէ քիչ են ստում։

—Այդպէս ուրեմն, Վասիլիյ Վասիլեվիչ, դուք վճռողաբար քշում էք Բալխօվսկայային։

--Կրկնում եմ, ոչինչ չունեմ նրա դէմ։

—Ի՞նչ կայ որ, ժլութիւն է։ Երևի մի որևէ ցացայի կը նշանակէք։ Իսկ ես ցացայի հետ չեմ կամենում ծառայել և կը գնամ նախագահի մօտ բացատրուելու... Կը գնամ էլի կը խըմեմ և չեմ վախենայ... Առանց ձեր ատեանի էլ տեղ կը գտնեմ...

Այդ ասելով, դուրս եկաւ առանձնասենեակից ծերուկը և այն սենեակում, ուր նստած էին օրիորդները, բարձր ձայնով ասաց.

—Օրիորդնե՛ր, Բալխօվսկայային վռնտել են։ Բաւական անարգաբար են վարուել նրա հետ։

Ոչ ոք չէ պատասխանում։ Բոլորի աչքերն էլ ցած են նայում։ Միայն ամենքից հետաքրքիրը հարցրեց.

—Արդալիօն Իվանօվիչ, երևի գիտէք, թէ ով կը լինի Բալխօվսկայայի տեղը։

—Երևի ձեզ մօտ մի նոր օրիորդ կը գայ, որը ձեզնից աւելի լաւ աչքով կանէ...

—Սխալուել էք, սիրելի Արդալիօն Իվանօվիչ,—յանկարծ ասաց հէնց նոր մտած Ալէքսանդրա Նիկօլայեվնան։

—Ուրեմն ո՞վ կը լինի...

—Ահա հէնց այդ միևնոյն Ստրիժեվը, որը այդպէս հետեւում է «պտղին». ինձ հիմա գանձապահն ասաց... Չէ՞ որ դա ճիշտ է, Սերգէյ Ալէքսանդրօվիչ,—դարձաւ նա երիտասարդ պարոնին սիրալիր հայեացքով։

Սա բորբոքուեց և վիրաւորուած արտասանեց.

—Ես ոչինչ չգիտեմ, Ալէքսանդրա Նիկօլայեվնա։

—Բայց և այնպէս դուք նշանակուած էք իմ տեղը։

—Այո... ինձ հէնց հիմա Ուրժումցեվը ասաց։

—Եւ գիտէ՞ք, որ ինձ վռնտում են։

—Լաւ ընկեր է,—բացագանչեց ծերուկը՝ հաշուապահի օգնականը՝ և նրա դիմագծերը շարժուեցին։—Իսկ դուք, Ալէքսանդրա Նիկօլայեվնա, չկարծէք թէ այստեղ բոլորն էլ այդպիսի

խոզեր են։ Ես ահա խմել եմ և չեմ կամենում խոզ լինել։ Դուք կը հեռանաք՝ ես էլ կը հեռանամ։

Ամօթահար երիտասարդ պարոնը, իբր թէ չլսելով արբած Արդալօն Իվանօվիչի ասածները, խոնարհեց գլուխը և եռանդով սկսեց չրխկացնել համրիչը։

Մի քանի րոպէ սենեակում տիրեց լռութիւն։

Շուտով սենեակում կարծես թէ մի երամ դեղձանիկներ ճլվլացին։ Օրիորդները ձգեցին գործն ու սկսեցին զրուցել այն բանի մասին, թէ իրա՞ւ օրիորդի տեղը Սերգէյ Ալէքսանդրօվիչը կը նշանակուի։

—Հաւանական է, որ աւելի ռոճիկ տան, քան մեզ,—նկատեց մի սիրուն, կարմիր բլուզայով օրիորդ։

—Դա անբարեխղճութիւն է։ Մեր սենեակը օրիորդների համար է։

Բայց յանկարծ բոլոր օրիորդները հանդարտուեցին։ Դռները ճռռացին. մտաւ Ուրժումցեվը և դառնալով Ստրիժեվին ասաց.

—Ահա այժմ բռնեցէք Բալխօվսկայայի տեղը։ Ալէքսանդրա Նիկօլայեվնան հեռանում է մեզնից։

—Ես էլ եմ հեռանում, կը բացուի և մի նոր տեղ։

Ալէքսանդրա Նիկօլայեվնան մեկնեց ձեռքերը Արդալօն Իվանօվիչին և ասաց.

—Մի՛ անէք այդ, մի՛ անէք, Արդալօն Իվանօվի՛չ։ Չէ՞ որ դուք ընտանիք ունէք։ Եւ մի՞թէ ձեր վարմունքը կազդէ որևէ մէկի վրայ։ Նայեցէք չորս կողմը... Սերգէյ Ալէքսանդրօվիչը երևի ձեզ խելագար կանուանէ։

Այդ րոպէին մտաւ մի երկար, նիհար ծեր և, սիրալիր բարևելով, անցաւ իր առանձնասենեակը. անցնելու ժամանակ ասաց Ուրժումցեվին.

—Վասիլիյ Վասիլևիչ, մի րոպէով ինձ մօտ մտէք։

## V

—Տանել չեմ կարողանում, երբ ինձ մօտ անախորժ պատմութիւններ են տեղի ունենում,—ասաց նախագահը և զըզուանքով կնճռեց անմիրուք և անբեխ երեսը։—Դուք մի կերպ կարգի բերէք։

—Թողնէ՞նք Բալխօվսկայային։

«Կարծեմ կարող էր ինքը հասկանալ և չանհանգստացնել

ինձ։ Եւ ինչո՞ւ համար է նա այդպիսի մի պաշտօնում, երբ ամէն մի դատարկ բանի համար խծկում է գլուխը»,—մտածեց նախագահը ու. աւելացրեց.

—Չէ՞ որ Բալխօվսկայան ճշտապահներից չէ։

—Այո՛, ճշտապահներից չէ։

—Ուրեմն տուէք նրան կէս տարուայ ռոճիկ, և նա կը հանգստանայ։ Գոնէ ինձ չեն անհանգստացնի։ Եւ տեղաւորեցէք մի օրիորդի։ Կը գայ ձեզ մօտ իմ այցետոմսով. ես չգիտեմ. կատարելապէս կարգին աղջիկ է։

Ուրժումցեվը խոնարհեց գլուխը և ասաց.

—Հաշուապահի օգնականը պատրաստվում է հեռանալու։

—Ինչո՞ւ։

—Հէնց այդ միևնոյն անախորժութեան համար։ Այսօր շատ խմել է և գտնում է, որ դուք անարդար էք Բալխօվսկայայի վերաբերմամբ։ Սպառնում է լրագիրներով։ Ի հարկէ Արգալօն Իվանօվիչը լաւ ծառայող է. բայց հօ մենակ նա չէ...

—Լրագիրներո՞վ... Ինչպիսի՜ անշնորհակալ անասուն է։ Ես վերցրի նրան այստեղ, երբ շրջում էր առանց կօշիկների, իսկ հիմա «անարդարութի՜ւն»։ Կարելի է և դրան ձուլել... Ես նըկատի ունեմ նրա տեղը մի կարգին մարդու։ Ասացէք, որ եթէ նրան թւում է, որ այստեղ միայն անարդարութիւններ են տեղի ունենում, այն ժամանակ ոյժով չենք պահի։ Ես խնդրում եմ ձեզ, Վասիլիյ Վասիլեվիչ, որպէս գի ո՛չ մի պատմութիւն... Բնաւ չեմ սիրում այդ պատմութիւնները...

## VI

Միւս օրը հարկերի հաշուետեսութեան մասում չկային Ալեքսանդրա Նիկօլայեվնան և հաշուապահի օգնականը։ Բալխօվսկայայի տեղը բռնել էր Սորիժեվը։ Նրա հետ նստել էր նորեկ՝ փայլուն, թխահեր օրիորդը, վայելուչ հագուած և բարակ, երկար, խնամքով պահուած մատների վրայ շարած գեղեցիկ մատանիներով։

Նա բոլորի հետ ծանօթացել էր։ Դիւրահամբոյր, սիրալիր, ծիծաղկոտ աչքերով նորեկը բոլորին էլ դուր էր եկել։ Օրիորդները ուրախ-ուրախ խօսում էին և հանդարտուեցին, երբ մտաւ Ուրժումցեվը։

Օրիորդները ուշադրութիւն դարձրին այն բանի վրայ,

թէ ինչպէս Ուրժումցեվը սիրալիր կերպով նայեց փայլուն, թխահեր օրիորդին։

—

Այդ միևնոյն ժամանակ Բալխօվսկայան ջղաձգաբար շրջում էր իր սենեակում։ Նրա հոգին դժուար կացութեան մէջ էր։ Ապագան նրան անյուսալի էր թւում։ Եւ նա կրկնում էր.

—Դո՛ւրս եմ վռնտուած... Դո՛ւրս եմ վռնտուած...

—Մայրի՛կ, ինչո՞ւ ես այդպէս տխուր,—ներս մտնելով սենեակ՝ ասաց աղջիկն ու փաթաթուեց մօրը։

Մայրը տանջալից ուրախութեամբ նայում էր աղջկան և զգում, որ ոյժը և աշխոյժութիւնը նորից լցնում են իր սիրտը։

—Ես, Մարիւսիա,—ասաց նա,—թողել եմ պաշտօնս։ Բայց կը գտնեմ մի ուրիշ գործ։ Չեմ հեռանայ տնից։ Հիմա միասին կը լինենք միշտ։

Եւ Ալէքսանդրա Նիկօլայեվնան խելագարի պէս սկսեց համբուրել աղջկան. և այդ ժամանակ արցունքները հանդարտ գլլորվում էին նրա այտերով։

ԿՈՍՏ. ՂԱԶԱՐԲԷԿԵԱՆ

# ԹԵԹԵԻ ԾՈՄ

*(Շոլոմ Ալէյխիմի)*

---

*Խայիմ Խայկինը, լիտովական փոքրիկ գիւղի այդ հասարակ, աննշան հրէան, ապացուցեց այն բանը, ինչ որ չկարողացաւ ապացուցանել երևելի բժիշկ Տաննէրը։*

*Տաննէրը ուզում էր ապացուցանել, որ մարդ կարող է առանց սնունդի դիմանալ քառասուն օր շարունակ, բայց քսան-ութ օր տանջուելուց յետոյ՝ այլ ևս չկարողացաւ դիմանալ, չը նայելով որ ամենայն օր նրան տալիս էին գդալով ջուր և սառուցի կտորներ, ու հետևում էին զարկերակին։*

*Մի խօսքով՝ մի ամբողջ պատմութիւն։*

*Խայիմ Խայկինը ծոմ էր պահում քառասուն օրից էլ աւելի. ի հարկէ, ոչ անընդհատ, այլ այնպէս, ընդհանուր առմամբ, տարվայ մէջ հարիւր օր։*

*Նա գդալներով ջրի բոլորովին կարիք չէր զգում։*

*Ինչո՞ւ համար են սառոյցները։ Ծոմ պահել նշանակում է չխմել, ուղիղ քսան-չորս ժամ ոչ մի բան չուտել։ Եւ ոչ մի բժիշկ էլ չէր նստում նրա մօտ՝ զարկերակը շօշափելու համար։*

*Բայց ախր ինչո՞ւմն է բանը։*

*Խայիմ Խայկինը բազմամարդ ընտանիքով ծանրաբեռնուած մի աղքատ մարդ է, որ ապրում է իր զաւակների միջոցներով։ Նրա զաւակները՝ մեծ մասամբ բոլորն էլ աղջիկներ են և համարեա բոլորն էլ աշխատում են ծխախոտի գլանակներ պատրաստող գործարանում։ Նրանք վաստակում են. որը՝ 15 կոպէկ, որը՝ 7 կոպէկ օրական, այն էլ ոչ ամենայն օր. կամ շաբաթ է լինում, կամ տօն, կամ գործադուլ. փառք Աստուծոյ, այժմ, ախր, ամեն տեղ, մինչև անգամ մեր այս փոքրիկ գիւղումն էլ, մարդիկ սկսել են գործադուլ անել։*

*Եւ այդ փողերով հարկաւոր է վճարել ինչ-որ նկուղի խոնաւ որջի համար, այդ փողերով հարկաւոր է հագուստ գնել,*

տանամաններ ձեռք բերել. հագուստներ՝ որ հարկաւոր են ամենքին, տնամաններ՝ երկու հոգուն մի մի զոյգ։ Այդ փողերով պէտք է կերակրուել. Նրանք ուտում են մի կտոր հաց՝ սխտորի հետ միասին, երբեմն մաճառ, երբեմն տարան, որից յետոյ մարդու ամբողջ ներսը սկսում է այրուել և դրա շնորհիւ կարելի է Թէկուզ ամբողջ գիշերը խմել։ Ուտելիքը բաժանվում է այսպէս. ամեն մէկին մի-մի կտոր հաց, ինչպէս կարկանդակ։

—Ա՜խ, այդ ուտելը,—այդպէս է ասում Խայիմ Խայկինի կինը. նա հիւանդ է և գիշերները հազում է։

—Աչքով չտանք,—ասում է Խայկինը և նայում, Թէ ինչպէս երեխաները կուլ են տալիս հացը։

Նա ինքն էլ ուրախութեամբ մի որևէ բան կուտէր, բայց այն ժամանակ ամենափոքրները, Ցրադկէն ու Բէյլկէն, կը միան առանց ընթրիքի։

—Ցրադկէ, Բէյլկէ, ահա ձեզ մի կտոր հաց էլ։

Ցրադկէն և Բէյլկէն մեկնում են իրանց փոքրիկ, սև ու նիհար ձեռքերը և նայում հօր աչքերին, Թէ արդեօք կատակ չէ՞ անում նա, ապա սկսում են կտոր-կտոր կծել. երբ մայրը այդ տեսնում է, սկսում է բղաւել։

—Շարունակ ուտում են հա՛ ուտում։

Հայրը չէ կարող այդ նկատողութիւնը լսել. Նա ուզում է պատասխանել, բայց լռում է. ի՞նչ իրաւունքով խօսէ։ Ինչացու՞ է նա այստեղ։ Մի ջարդուած գանգ, վերջինը, ամենաաննշանը, որ պէտքական չէ ոչ մէկի համար։

Եւ ի՞նչ հարկ կայ խօսելու։ Նա ոչ մի բան չէ անում, ոչ Թէ այն պատճառով, որ չէ ուզում, և ոչ էլ այն պատճառով, որ այդ համարում է իր համար անհամապատասխան, այլ որովհետև անելու ոչինչ չկայ. ուղղակի գործ չկայ. ահա Թէ բանը ինչումն է։

Ամբողջ գիւղը տրտնջում է անգործութեան մասին։

Քշել հաւաքել են այստեղ մեծ Թուով հրէաներ, լցուել են նրանք ինչպէս ձկները տակառի մէջ, սեղմում, ճնշում են իրար։ Ամեն ինչ դէպի լաւն է գնում,—մտածում է Խայիմ Խայկինը, — այնուամենայնիւ լաւ է, որ նա գոնէ զաւակներ ունի. ուրիշները այդ էլ չունեն։ Վատ է, երբ ստիպուած ես յոյս դնել զաւակների վրայ, ոչ Թէ այն պատճառով—Աստուած մի արասցէ—որ նրան մի որևէ բան զլանում են... Չէ, նա ինքը չէ կարող։ Նա գիտէ, որ նրանցից ճմլելով ծծում դուրս են քաշում քրտինքի վերջին կաԹիլը. Նա այդ լաւ գիտէ։

Հացի իւրաքանչիւր պատառը նրանց արեան կաթիլն է. նա խմում է իր զաւակների արիւնը։

—Հայրիկ, ինչո՞ւ դու չես ուտում,—հարցնում են նրան զաւակները։

—Այսօր ծոմ եմ պահում,—պատասխանում է Խայկինը։

—Դարձեա՞լ ծոմ։ Այդ քանի՞ ծոմ ունես դու։

—Աւելի պակաս, քան շաբաթվայ օրերն են։

Եւ Խայկինը սուտ չէ ասում։ Նա շուտ-շուտ է ծոմ պահում, բայց և այնպէս պատահում են օրեր, երբ նա ուտում է։ Իսկ այն օրը, երբ Խայիմ Խայկինը ծոմ է պահում, նրա համար լաւագոյն օրն է։

Նախ և առաջ՝ դա ծառայութիւն է Աստուծոյ առաջ, եդեմական երջանկութեան մի բաժինն էլ է. երկրորդ՝ որ նրա վրայ մի գրօշ էլ չէ ծախսվում, և նա ոչ ոքի ոչ մի բանում պարտաւոր չէ հաշիւ տալ. ասենք՝ առանց այդ էլ նրանից հաշիւ պահանջող չկայ, բայց ախր ի՞նչ կարիք կայ, երբ կարելի է այդպէս էլ եօլա գնալ…

Դրանից բացի, մէկ էլ, որ զգում ես քեզ անասունից էլ վեր։

Անասունը ուտում է ամենայն օր, իսկ ես կարող եմ ուտել օրամէջ տալով. մարդը պէտք է անասունից վեր կանգնած լինի։ Ա՜խ, եթէ կարելի լինէր հասնել այն աստիճանին, որ մարդը կարողանար ապրել բոլորովին առանց սնունդի…

Բայց այդ անիծուած ստամոքսը. սև տարի լինի նրան,—ասում է ինքն իրան Խայիմ Խայկինը։ Եւ երբ Խայկինը քաղցած է, սկսում է հետևեալ փիլիսոփայութիւններն անել.

—Ստամոքսից և ուտելու սովորութիւնից էլ առաջ են գալիս բոլոր դժբախտութիւնները աշխարհումս. ստամոքսի շնորհիւ, շնորհիւ ուտելու սովորութեանս՝ ես այսօր աղքատ եմ, իսկ իմ զաւակները պէտք է աշխատեն, վտանգեն իրանց առողջութիւնը և կեանքը։ Ի՞նչ կը լինէր ախր, եթէ մարդ ուտելու կարիք չունենար։ Ա՜յ-ա՜յ-ա՜յ. այն ժամանակ իմ զաւակները միշտ էլ տանը կը լինէին. հերիք է տանջուել, հերիք է քրտնել, հերիք է գործադուլ անել։ Թող կորչեն ֆաբրիկաները, թող կորչեն ֆաբրիկանտները։ Կորչեն հարուստները. այլ ևս չկան աղքատներ, չկայ նախանձ, չկայ թշնամութիւն, չկան պատերազմներ, արիւնհեղութիւն… Դրախտ, դրախտ…

Այդպէս է մտածում Խայիմ Խայկինը՝ խորասուզուելով փիլիսոփայական մտածմունքների մէջ. նա սկսում է ափսոսալ,

շատ ափսոսալ, թէ ինչու Աստուած ստեղծել է մարդկանց այնքան նման անասուններին:

Այն օրը, երբ Խայկինը ծոմ է պահում, ամենալաւ օրն է նրա համար, իսկ իսկական պահոց օրը, օրինակ՝ տաճարի աւերման օրը, նրա համար—նա այդ ամաչում է խոստովանել—ուղղակի տօն է: Հասկանում էք. ոչինչ էլ չէ կերել, անասուն էլ չէ, չէ էլ խմում իր զաւակների արիւնը, և Աստուծուն հաճելի բան է արել, և կուշտ լաց է եղել տաճարի աւերման առիթով:

Ի՞նչպէս կարող է լաց լինել մարդ, երբ կուշտ է: Կուշտը կարո՞ղ է միթէ վիշտ ունենալ:

—Տարօրինակ մարդիկ են: Անձնատուր են լինում իրանց որկորին, վախենում են ծոմից, կաշառք են տալիս Աստուծուն:

Այդպէս էր ասում Խայկինը և որոտ ու կայծակ թափում նրանց գլխին, որոնք ծոմապահութիւնից փրկում են իրանց և գանձարանի արկղը ձգում երեք գրօշ:

Երուսաղէմի տաճարի աւերման յիշատակին սահմանուած ծոմը ամենքն էլ համարում են ամենածանրը բոլոր ծոմերից, և Խայիմ Խայկինը այդ բանը չէ հասկանում:

Օրը մե՞ծ է: Ուրեմն՝ եթէ այդպէս է, գիշերը աւելի փոքր է:

Փողոցում շո՞գ է: Էլ մի ման գաք արևի տակ, նստեցէք սինագօգում և աղօթեցէք, ուսումնասիրեցէք Թալմուտը:

Փառք Աստուծոյ, սովորելու բան կայ:

—Ես ասում եմ ձեզ,—նկատում է Խայկինը,—որ տաճարի աւերման օրը՝ ծոմերից ամենաթեթևն է, ամենա... ամենալաւը: Օրինակ, ապաշխարութեան օրը: Ասուած է. դուք պէտք է սպանէք ձեր մարմնական ցանկութիւնները: Ինչո՞ւ համար, որպէս զի աղերսէք ձեզ համար լաւ վիճակ, լաւ տարի: Տաճարի աւերման օրուայ մասին ասուած չէ. ծոմ պահեցէք, բայց և այնպէս դուք ծոմ էք պահում. և ի՞նչպէս կարող էք չպահել էլ մի այդպիսի օր, երբ տաճարը աւերուեց և հրէաներին կոտորում էին... Չէ ասուած՝ լաց եղէք այդ օրը, բայց ինքնաբերաբար լաց ես լինում, երբ մտաբերում ես, թէ ինչ ենք մենք կորցրել... Ափսոս, որ այդ տեսակ ծոմ մի հատն է միայն,—ասում էր Խայկինը:

—Լաւ, իսկ Թամուզայի տասնեօթերորդը,—նկատում է ներկայ եղողներից մէկը:

—Տարէնը մի անգամ միայն,—պատասխանում է Խայկինը հառաչանքով:

—Իսկ Էսֆիրիի պա՞սը:

—Մի անգամ միայն,—Նորից հառաչելով պատասխանում է Խայկինը:

—Է՜հ, ընք Խայիմ, ինչպէս երևում է, շատ էք սիրում դուք այդ ծոմերը, ի՞նչ է, եղածները քի՞չ են ձեզ համար:

—Քիչ են ծոմերը, քիչ են,—ասում է Խայկինը և վճռում ծոմ պահել տաճարի աւերման օրուայ Նախօրեակն էլ:

Լաւ բան է երկու օր շարունակ ծոմ պահել: Հիանալի է:

Բոլորովին մոռանում էլ ես՝ թէ ստամոքս կայ, և որ հարկաւոր է բան ուտել, և այդպիսով կարելի է յետ մնալ այն սովորութիւնից, որը մարդուն հաւասարեցնում է անասունի հետ:

Դժուար է միայն չխմելը: Խայիմ Խայկինը յանձն է առնում ամբողջ շաբաթը մնալ առանց սնունդի, բաւականանալով օրական մի բաժակ ջրով:

Դուք կարծում էք, որ այդ միայն ե՞ս եմ այդպէս յիմարութիւններ ասում: Խայիմ Խայկինը այնպիսի մի մարդ է, որը ինչ որ ասաց, այն էլ կանի:

Ամբողջ շաբաթը նա ոչինչ չկերաւ և իր ոյժերը պահպանում էր միայն սակաւաքանակ ջրով: Ո՞վ է նրա վրայ ուշադրութիւն դարձնում, երբ նրա կինը հիւանդ է:

Մեծ զաւակները գործարանումն են, փոքրիկները դեռ ևս բան չեն հասկանում. Նրանք միայն գիտեն, որ քաղցած են (իսկ Նրանք քաղցած են շարունակ):

—Ահա ձեզ մի քիչ հաց էլ,—ասում է Խայկինը և տալիս Նրանց իր բաժինը:

Ֆրադկէն և Բէյլկէն մեկնում են իրանց Նիհար, փոքրիկ սև ձեռքերը և ուրախանում:

—Հա՛յրիկ, դու չե՞ս ուտում,—հարցնում է Նրան մեծ աղջիկը ընթրիքի ժամանակ.—այսօր չէ՞ որ ծոմ պահելու օր չէ:

—Աստուած մի արասցէ, ես ամենևին ծոմ էլ չեմ պահում,—պատասխանում է հայրը և մտածում.—խաբեցի Նրանց, ճարպիկ կերպով խաբեցի, բայց սուտ էլ չասացի. չէ՞ որ ջուր խմել եմ:

Ջուր խմել. դա ուտելիք չէ և ծոմ չէ:

Իսկ երբ հասաւ տաճարի աւերման օրը, Խայկինը իրան լաւ ու թեթև զգաց, ինչպէս երբէք չէր պատահել:

Նա ամենևին ուտելու պահանջ չէր զգում. ընդհակառակը, նա զգում էր, որ սնունդը կանգ է առել մնացել իր բըկում։

Այսինքն, սրտից քիչ ներքեւը շատ է նոյն իսկ խուտուտ ածում, իսկ ոտքերն ու ձեռքերը դողում-քաշւում է, քաշւում դէպի հողը, ուժերը պակասում են, աչքերը սևանում, ուշագնացութեան մօտ է, համարեա, բայց ֆի՜։ Ի՞նչ է նշանակում։ Ամբողջ շաբաթը ծոմ է պահել, իսկ այդ օրը յանկարծ չէ էլ կարողանում դիմանալ։ Եւ նա վերցնում է իր բաժին հացը, մօտ կանչում Ֆրադկէին և Բէյլկէին և ասում նրանց կամացուկ.

—Երեխաներ, վերցրէք ու կերէք, միայն թէ ոչ ոք չտեսնի։

Երեխաները վերցնում են, նայում հօր մեռելանման դէմքին ու դողացող ձեռքերին, Իսկ Խայկինը նայում է, թէ ինչպէս երեխաները ուտում են, և կուլ է տալիս թուքը, աչքերը փակում, վեր կենում տեղից և, չսպասելով զաւակների վերադարձին գործարանից, վերցնում աղօթագիրքը և, ոտները հագիւ քաշ տալով, գնում սինագոգ։

Սինագոգում դեռ ևս՝ համարեա ոչ ոք չկայ։ Նա իր համար տեղ է բռնում խազանի մօտ վայր ձգուած աթոռի վըրայ, մոմը վառում է պատրաստում, կպցնում նստարանի վեր ցցուած ոտին, ապա ծնրաչոք խոնարհելով դէպի ամվօնը՝ բաց է անում աղօթագիրքը.

«Ողբա՛, Սիօն և բոլոր քաղաքներ»... Եւ նա փակում է աչքերն ու տեսնում Սիօնը... ոտից մինչև գլուխ սևազգեստ մի կին, սև քողը դէմքին ձգած, հեծկլտում է, լալիս իր զաւակների համար, որոնք կոտորվում են ամենայն օր օտար երկիրներում ուրիշների մեղքերի համար...

Ձե՞ս խնդրում դու ինձանից, Սիօն, քո թշուառների, ծանր հառաչողների համար։

Ահա. բերում եմ. քեզ ողջոյնը նրանց։

Աւա՜ղ, զրկուել ես այդ զաւակներից. Նրանք էլ չկան։

Եւ նա բաց է անում աչքերն ու տեսնում. պատուհանի փոշոտուած, կեղտոտ ապակիների միջից ներս է թափանցում մայր մտնող արևի վառ ճառագայթը։ Եւ նա թէև փակում է աչքերը, բայց և այնպէս տեսնում է այդ ճառագայթը. և ոչ միայն ճառագայթը, այլ և ամբողջ արեգակը, որին ոչ ոք չէ կարող տեսնել, ոչ ոք, բացի նրանից։

Խայիմ Խայկինը նայում է նրան ու տեսնում։ Ինչո՞ւ համար է այդ ողորմութիւնը։

Երևի նրա համար, որ նա հրաժարուեց աշխարհից ու նրա բոլոր բաւականութիւններից։

Եւ նրա համար լաւ է... ու թեթև. նա այժմ կարող է ամեն բան տանել. ծոմ պահելը նրա համար դիւրին կը լինի...

Գիտէ՞ք արդեօք։ Այսօր նրա համար կը լինէ մի դիւրին, շատ դիւրին ծոմ։

Եւ Խայիմ Խայկինը նորից է փակում աչքերն ու տեսնում իր առաջ տարօրինակ բաներ, ինչ-որ արտասովոր, չտեսնուած։

Հրեշտակները թռչում են։ Նա լաւ դիտում է նրանց և ճանաչում. իր զաւակներն են։ Նա ուզում է բան ասել նրանց, բայց չէ կարողանում...

Նա ուզում է արդարացնել իրան նրանց առաջ։ Նա մեղաւոր չէ...

Մեղաւոր չէ։ Ախր բան կերե՞լ էր նա միթէ։ Մեղաւո՞ր է նա, որ մի տեղում հաւաքուել են այնքան հրեաներ, ոտնատակ են տալիս իրար, ճմլում, սովամահ լինում...

Ինչո՞վ է մեղաւոր, որ մարդուն հարկաւոր է մի ուրիշի քրտինքը, որ մարդիկ դեռ ևս չեն հասել այն աստիճանին, որ հետամուտ չլինեն, չհալածեն իրար, չքշեն այնպէս, ինչպէս որ ձին են քշում աշխատանքի։

Ձին էլ է նոյն իսկ խեղճ, Աստուծոյ արարածն է. խեղճ են բոլոր անասունները։

Եւ Խայկինը բաց է անում աչքերը, ու ամեն ինչ այնպէս պայծառ է, այնքան թեթև. ամեն ինչ շարժվում է ինչպէս ծուխի միջից, և նա զգում է, որ ինչ-որ մի բան հեռանում է իր մարմնի միջից, ինչ-որ իր ներսից դուրս է գալիս, ձգվում, բարձրանում դէպի վեր, ինչպէս ծուխ, և բաժանվում իրանից, և նա այնպէս լաւ է զգում իրան, թեթև։

Նա խոր հառաչանք է արձակում, և այլ ևս ոչինչ չէ ըզգում։ Օ՛, ծոմը նրա համար շատ դիւրին էր, թեթև։

Սինագօգի ծառայ Բէրը, մի դեղին հաստաշրթունք հրեայ, ներս մտաւ սինագօգ՝ կրունկները մաշուած գուլպաները ոտին ու տեսաւ Խայկինին, գլուխը կախ ձգած՝ նստած, բաց աչքերով. այդ բանը նրան դուր չեկաւ. նա կարծեց, որ Խայկինը քնած է, և սկսեց փնթփնթալ. «Ինչ լկտիութիւն է... պառկել է մի քիչ... կոմս Պասկեվիչն անգամ չէր համարձակուի այդպէս նստել... երևում է՝ լաւ է նախաճաշել... Րեբ Խայիմ, խնդրեմ։ Է՜յ, րէբ Խայիմ»։

Խայիմ Խայկինը այլ ևս ոչինչ չէր լսում։

Արևի վերջին շողերը ընկնում էին Խայիմ Խայկինի խաղաղ դէմքի վրայ, Նրա փայլուն սև մազերի ու կիսաբաց բաբի, քաղցած աչքերով պատսպարող՝ սև, Թաւ յօնքերի վրայ, լուսաւորելով գունատ, մեռած, միշտ քաղցած դէմքը։

Իսկ իմանում էք։ Խայիմ Խայկինը Թեթև, շատ Թեթև ծոմ ունէր։

Լ. ԴԱՆԻԷԼԵԱՆ

---

# ԳԻՒՂԱԿԱՆ ՄՐՄՈՒՆՋՆԵՐԻՑ

Ոյժից ընկել ենք, հացից զրկուած,
Եղած-չեղածս պարտատէր տարաւ.
Ոչ դպրոց ունենք, ոչ մարդ կրԹուած,
Միակ տղէս էլ ձեռքիցս Թռաւ...
Գնաց քաղաքը, կասէ՝ «գործի եմ»,
Բայց անունն ինչ է, այդ Աստուած գիտէ.
Ուրիշ տեղերից ինչպէս լսած եմ,
Տղաս ցաւի մէջ այնտեղ կը փտէ...
Հողը չոր, պակաս, արհեստ չգիտենք,
Մէկ հատ աղբիւրն էլ սարի գլխին է...
Սար ու քարի մէջ՝ դուզ ճամբայ չունենք.
«Սև ցաւն» ու հարինք գիւղումը լիքն է...
Վաղը կը պատէ մեզ բուք ու բորան,
Կէս մերկ, կէս սոված, լուիկ, Նամուսով,
Մեզ հետ չորս մօզի, քոնձախներս վէրան՝
Ապրում ենք, անցորդ, լոկ գարնան յոյսով...

ՇԱՏ-ԷԼ-ԱՐԱԲ

# ՉՈՐՍ ԿՕՊԷԿ

(Կինմի ուսանողական կեանքից)

---

Նա կանգնեց ժողովրդական գրադարանի դռան առաջ։

Փչում էր սառը, մինչև ոսկորները թափանցող սաստիկ քամի. ցուրտ էր, և զգացվում էր, որ վերև՝ քաղաքի վրայ կուտակուած մուգ-արճճագոյն ահռելի ամպերը շուտով պատառ-պատառ պիտի լինեն ու առաջ բերեն բուք-բորան։

Նա հագել էր պատառոտուած, հին վերարկու, կոճկած՝ մնացած միակ երկու կոճակներով, և ցուրտը թափանցում էր մարմնի մինչև խորքերն ու ստիպում նրան երկար դողդողալ։ Նա մի հայեացք ձգեց դռանը, յետոյ երեսը շուռ տուեց մի կողմ ու ընկաւ մտատանջութեան մէջ։

Նա շատ էր ցանկանում գրադարան ներս ընկնել մի կերպ, ուզում էր կարդալ, վերջացնել մի վերին աստիճան հետաքրքրական յօդուած «Русское Богадство» ամսագրի մէջ, նոյնպէս և տաքանալ ու հանգստանալ տաք սենեակում։

Բայց և ճաշել էր ուզում... Նա մտածում էր, որ իր մօտ կայ ընդամենը չորս կոպէկ։ Երեք և մի կոպէկանոց։ Հացի համար հարկաւոր է երեք կոպէկ, մնում է մի կոպէկ։ Չի բաւականանայ։

Տխուր, դառն մի ժպիտ սահեց նրա շրթունքներով, և նա նորից նայեց դռանը։

Ասենք թէ կարելի է գնել վատ, ցածր տեսակի հաց, ֆունտը երկու կոպէկանոց... Բայց ի՞նչ կը լինի, եթէ գանձապահի մօտ չգտնուի մի կոպէկանոց՝ յետ տալու։ Չէ՞ որ դա այնպիսի մի չնչին գումար է, որ յաճախ չի գտնուի։ Եթէ տայ մի կոպէկանոցն էլ ու ասէ՝ «խնդրեմ յետ տուէք երկու կոպէկ»...

Է՜, ինչ-որ անյարմար է։ Ապա ի՞նչ անէ։

Նա խորասուզուած նայում էր գետնին։ Յետոյ յանկարծ բարձրացրեց գլուխը, մի անգամ էլ հայեացք ձգեց դռանը ու խոր ոգոց հանեց։

—Չեմ գնայ,—կիսաձայն վճռեց ու քայլերը ուղղեց դէ-պի Կրեսչատիկ։

Քամին հիւրասիրում էր Նրան իր ուժգին հարուածներով, վերարկուի փէշերը փախչում էին իրարից, ուզում էին պոկ գալ, յանձնելով թշուառ ուսանողի առանց այն էլ կապուտած մարմինը անողորմ քամու քմահաճոյքներին, քամու՝ որ ուժեղ սարսուռ պատճառեց Նրան։

Յոգնած, քաղցած, վրդովուած՝ Նա քարշ էր գալիս մայթերի վրայ՝ գլուխը կախ արած։ Նա զայրանում էր, որ հնարաւորու-թիւն չունեցաւ ներս մտնել տաք գրադարանը, զայրանում էր ցուրտ, անխիղճ քամու և իր անկուշտ ստամոքսի վրայ։

—Բարև, Կաբիլին,—լսուեց ետևից մի ծանօթ ձայն։

Նա արագ բարձրացրեց գլուխն ու կանգնեց։

Նրա առաջ կանգնած էր իր ընկերը, միևնոյն բաժան-մունքի մի ուսանող՝ աշնանային, նոյնպէս հնացած մի վերար-կու հագին, գոյնը գցած, հնամաշ ուսանողական գլխարկը գլխին։

—Բարև։

Եւ Նրանք իրար ձեռք սեղմեցին։

—Ո՞ւր ես գնում։

—Ոչ մի տեղ,—պատասխանեց Կաբիլինը.—այնպէս քարշ եմ գալիս. թափառում էի. ուզում էի գնալ գրադարան, բայց…

Նա յանկարծ կանգ առաւ։

—Լսիր, քեզ մօտ ունե՞ս չորս կօպէկ, այնպէս որ լինի երկու հատ երկու կօպէկանոց։

—Ոչ։ Իմ մօտ ոչ մի կօպէկ չկայ։ Իսկ քեզ ինչո՞ւ համար է հարկաւոր։

Կաբիլինը բացատրեց։

—Իսկ դու արդէն ճաշե՞լ ես,—հարցրեց ընկերը։

—Ես վաղուց դադարել եմ ճաշելուց. միայն թէյ եմ խը-մում առաւօտները և երեկոյները։

—Եթէ այդպէս է, ինչո՞ւ վանականների մօտ չես գնում։

—Չեմ կարող։ Ինչ-որ…

Նա թափահարեց ուսերը։

—Ի զուր… Ա՜հ, այստեղ կանգնելը անյարմար է. թէ ցուրտ է և թէ ուրիշներին կը խանգարենք։ Գնանք. ինձ ճանապարհ ձգիր։ Ես գնում եմ դասերի։

—Կարող եմ, գնանք։

Նրանք գնացին։

—Վրդովեցուցիչ է,—խօսեց յանկարծ Կաբիլինը.—մեր ու-սանողական գանձարանում ոչինչ չկայ, դատարկ է. ինձ քիչ

առաջ մերժեցին. իսկ պարտապանները չեն էլ մտածում վճարել, վերադարձնել իրանց պարտքերը։ Յիսո՜ւն-հազար րուբլի։ Դա զարհուրելի գումար է։

—Ի՞նչ պէտք է անես։ Երևի բարի մարդիկ մոռացել են։

—Բուրժուաներ։ Բայց չէ՞ որ դա անարդարութիւն է, ստորութիւն։ Մենք քաղցից պիտի մեռնենք նրանց բարեսրտութեան համար... Չէ՞ որ նրանք էլ մի ժամանակ ուսանողներ էին. հաւանական է, որ մեզ պէս նրանք էլ քաղցից ու ցրտից դողդողացել են. Նրանց քաջ յայտնի է, գիտեն, թէ ի՛նչպէս է անցկացնում իր դառն օրերը աղքատ ուսանողը։ Ինչո՞ւ, ինչո՞ւ չեն վերադարձնում իրանց պարտքերը։ Ինչո՞ւ։ Նրանք հիմա կամ գրականագէտ, բժիշկ, փաստաբան կամ թէ չէ՝ ո՛վ գիտէ ի՛նչ, ի՛նչ իւղալի պաշտօնների ու չաղ ռոճիկների տէր են. Նրանք հիմա աղքատ չեն, նրանք փող ունեն։

—Կարելի է կան և այնպիսինները, որ փող չունեն։

—Բայց չէ՞ որ մեծամասնութիւնը, ես հաւատացած եմ որ, աղքատ չէ և շատ նախանձելի պայմանների մէջ է։ Է՜հ, ի՞նչ ասենք։

Կաբիլինը թափահարեց ձեռքով։

—Ինչ-որ մի յօդուածում կարդացել եմ,—յանկարծ սկսեց ընկերը,—մեր ապագայի մասին։ Այնտեղ գրուած էր. «Երիտասարդութիւնը մեզանում գաղափարական է մինչև համալսարանը վերջացնելը. բայց բաւական է, որ վերջացնէ և շփուի իսկական կեանքի իրականութեան հետ, ո՜, այն ժամանակ նա ընկնում է, կոպտանում, անպիտանանում...»։

—Եւ զզուելի դառնում,—աւելացրեց Կաբիլինը։

—Ցաւալի է, բայց ի՞նչ արած. փաստերն ակնյայտնի են...

Նրանք անցան գրադարանի մօտով։

—Որքա՜ն ցանկանում էի ներս մտնել գրադարան,—մրմընջաց Կաբիլինը։

—Ներս մտիր։

—Իսկ հա՞ց, ինչո՞վ գնեմ։ Կը գնայի, եթէ մէկը ինձ տար երկու հատ երկու կոպէկանոց։

—Մանրացրու այդ ծխախոտ վաճառողի մօտ, որը կանգնած է ծխախոտի արկղը վզից կախ արած։

—Անյարմար է, երիտասարդ, ինչ-որ...

—Է՜հ, դու էլ։ Տուր ինձ փողերը։

Կաբիլինը տուեց։

Ծխախոտ վաճառողի մօտ գտնուեց երկու հատ երկու կոպէկանոց, և Կաբիլինին վերջապէս աջողուեց գրադարան մտնել։

Իսկ ընկերը շտապ քայլերով առաջ անցաւ դէպի իր ճանաարհը։պ

Թարգմ. Յ. ՁԱՏԻԿԵԱՆՑ

# ԽԱՂԱՂՈՒԵՑ ՇՈՒՐՋԸ

(Սկիտալեցից)

Բեկուած են լարեր։ Ե՛րգ, հիմա լռիր.
Բոլորը ասինք պայքարից առաջ.
Շնչում է նորից հրէշը զազիր,
Լարի տեղ թնդաց զէնքի զիլ շառաչ։
Արբեց քաղաքը արիւնով բոլոր,
Ծուխ ու մուր հագան թէ սար և թէ հանդ.
Դարձեալ գիշեր է, նա մէգում այսօր
Դարձեալ կռում է հին կապանքը ժանտ։
Խաղաղուեց շուրջը. փոսերում ծածուկ
Մարդիկ գտել են վերջին հանգրուան,
Մարդկանց հիւծում է զնդանը անձուկ,
Զնդանը խեղդուկ, որպէս դամբարան։
Խաղաղուեց շուրջը. մի զարզանդ գիշեր,
Էն նախկին կեանքից ո՛չ ձայն, ո՛չ պատգամ.
Վարը՝ պարտուածը սրում է սուսեր,
Վերը՝ յոգնած է յաղթողը զառամ։
Յափրած գազանը՝ սմքած ու քաւթառ՝
Արդ նշմարում է վարը ինչ-որ ջանք.
Այդ հսկան այնտեղ ջարդում է կայտառ
Հին խարխուլ դուռը, իրա կուռ կապանք։
Եւ ազատութեան զառամ գիշատիչ՝
Կընկնէ հրէշը ծանր բազկի տակ.
Հերոսը ուրախ շրթերին քրքիջ
Գարշ դին կը նետէ լայն հրապարակ։

Դ. ՆՈՐԵԿ

# ԿԱՐԱ-ՕՂԼՈՒ*)

## (Հայ ապստամբի մը կեանքէն)

---

### ԳԻՐՔ Գ.

---

### V

### Նեմեսիս

Միւս առաւօտ արևը պայծառ ու յստակօրէն կը ճառագայթէր, որպէս թէ անթիւ հայոց խողխողումը քաջալերութեան բան մը ըլլար։ Այդ՝ նոր եռանդ ներշնչեց Սվազի շուրջը գտնուող քիւրդերուն և Թիւրք վարձկաններուն՝ իրենց զբաղումը շարունակելու։ Կանոնաւորները իրենց սուինի ծայրերը կը յղկէին — սուինէն աւելի առձեռն զէնք չկայ. կրնաս մանուկ մը ատոր ծայրը հանել կամ մայրը կիսել ատով՝ եթէ բոլոր բարձրացնելու աստիճան անխոհեմ գտնուի — և քիւրդերը դանակնին կը սրէին։ Պօլսէն գաղտնի հրաման էր եկած ջարդել ու չխնայել, և, որպէս հաւատարիմ հպատակներ, որոշած էին «Անիծեալ Աբդիւլի» հրովարտակը գործադրել։ Բացի այդ, ահագին աւար կար հարուստ վաճառականներու տունէն փախցնելու, կանայք՝ իրենց ամուսիններէն խլելու, կոյսեր՝ իրենց մայրերէն, անմեղ ալևոր ծերունիներ երկաթածայր բիրերով մեռցնելու, հայ վաշխառուներու ստացագիր մը տալու՝ փամփուշտի ձևին տակ։ Սվազէն դուրս՝ այն զինուորները, որոնց հրամայուած էր գերեզման փորել, իրենց պաշտօնին փուճութեանց վրայ կը գանգատէին. որովհետև գիտէին թէ դիակնե-

---

*) «Արօր» 1910 թ. № № 6—7, 8—9—10, 11, 12, և 1911 թ. № № 1, 2—3, 4, 5—6 և 7—8.

րուն մինչև իրենց հասնիլն արդէն աւոնք մերկացած կըլլային ունեցածնուն։ Սվազի թիւրք բնակչութիւնը, սակայն, գըզուանք զգաց՝ լսելով վալիի փոխանորդին կողմէ, թէ ամերիկեան միսիօնարներու տան վրայ յարձակում պիտի չգործուէր։ Ատի ամենէ հաճելի դէպքերէն մէկը պիտի ըլլար, կտրել անհաւատ շուներուն գլուխները, որոնք այնքան անձանձիր հայերը կը սիրէին իրենց դաստիարակութեան բարիքներէն օգտըւելու բաղձանքին համար։ Բայց արիւնարբուներու ընտրեալ խումբը, որ կառավարիչին աղերսագիր տուած էր միսիօնարներու տան շուրջը քանի մը հրավառութիւններ ընելու թոյլտւութիւն առնելու համար, հաշտուեցաւ՝ երբ վալիի փոխանորդը զիրենք հոն տարաւ և պատ. Ալփէօսը կանչեց։

Այս վերջինս, յուզման միջոցին, առանց սովորական հանդիսաւոր զգեստներուն, խոշոր հրացանով մը երեցաւ։

—Ի՞նչպէս էք, փոխ-կառավարիչ,—հարցուց դրան մէջէն։ —Եթէ խաղաղութիւնով կուգաք՝ վատնելու ժամանակ չունիմ. եթէ կռուի համար՝ ցաւալի պիտի ըլլայ ինծի ձեր պաշտօնական մարմնոյն մէջ ծակ մը բանալ, բայց պարտաւոր եմ ընել, և եթէ այս հին հրացանը կը ճանչնամ, խոշոր ալ ծակ մը կըլլայ այդ։

Փոխ-կառավարիչը յամրօրէն վար իջաւ ջորիէն և զինուորներուն հրաման տուաւ մուտքը պահպանել։

--Օ՜, օ,—գոչեց առանց դաժանութեան, զայրացած ծերունի միսիօրարին,—ձեր բժիշկը զիս թիֆօյէն բուժեց, և հիմա դուն այդ տգեղ զէնքովդ մարմինս ծակել կուզես։ Դո՛ւ, մանաւորապէս, սրբազան հօջա մը։

—Ներս եկո՛ւր,—ըսաւ ծերուկը կարճ կերպով։—Կարծեմ թէ, Յուսուֆ փաշա, դուն քու հրամաններդ ունիս այս արիւնարբու գործին համար ու ես իմս՝ տարբեր գլխաւորէ մը։ Արդ՝ ինծի մտիկ ըրէ։ Քու մարդիկդ պիտի հեռացնե՞ս միսիօնարներու տունէն թէ՞ պիտի թողուս որ վրանիս յարձակին։ Մենք վախցողներ չենք. բայց ես իմ ժամանակս ուրիշ բանի համար կը կարօտիմ։—Արցունքները ծերունիին այտերէն վար կը հոսէին։—Կարծես աշխարհի վերջն է հասած,—ողբաց։—Աշխարհի վերջը և կեանքի մը գործունէութեան վախճանը։

Յուսուֆ փաշա իր գիրուկ ձեռքը բարձրացուց խորապէս զգացուած եղանակով մը և սիգարէթ մը վառեց։

—Սիրելի հօջա,—ըսաւ, իր ամենաքաղաքակիրթ շեշտով.—զունդերը իմ հրամանիս ներքև չեն. վալին այստեղ չէ. ես կարող չեմ միջամտել։ Ատկէ զատ՝ ի՞նչ է այս իրարանցումը քա-

նի մը հայերու համար... Դուն ևս ինծի չափ գիտես թէ՝ միակ լաւ հայը մեռեալ հայն է։

—Այն ատեն շատ չարեր ալ չպիտի մնան,—ըսաւ ծերունին ողբահար։—Ու այն քնքուշ մանկտիները... Եթէ միջոց մը ունենայի վեհափառ տիրոջդ մերձենալ, գանկը կը փշրէի ատով,—և հրացանը ուսին դրաւ, աչքերը կիրքով բոցավառ։

—Լռութիւն,—պատասխանեց միւսը։—Խամէք է։ Միայն մէկ Աստուած կայ։ Մուհամմէդ Աստուծոյ մարգարէն է ու իմ օգոստափառ վեհապետս Աստուծոյ ստուերը՝ երկրի վրայ։

—Մէկ կողմ դիր այդ բոլորը,—յայտնեց պատուելի Ալփէոս։—Քու օգոստափառ վեհապետիդ ինչ ըլլալն աշխարհ շուտով պիտի իմանայ։ Շատ անգամներ կռուած եմ հոգիիդ հետ և գիտեմ, որ բաւական խոնարհած է այդ։ Հիմա լաւ մը երեսս նայէ ու ինծի ըսէ թէ՝ միսիոնարական տան հայոց ապահովութեան պիտի հսկե՞ս և քու արիւնարբուներէդ մէկ քանին պիտի տա՞ս, որ Կարա-Օղլուին ետևէն երթանք։ Միակ հայը որ սպանելու էք, վրան իսկ չէք խորհիր։

Փոխ-կառավարիչը, որ այս աշխարհի վրայ մնացած շատ հազուագիւտ բարի Թիւրքերէն մէկն էր, իր խռովեալ ծերունի բարեկամին երեսին նայեցաւ և մարգարէին մօրուքով երդուեցաւ, որ միսիոնարական բնակարանն ու իր մէջ գտնուողները ապահով պիտի մնան և թէ տասն ընտրեալ պիտի յանձնէ պատուելիին՝ Կարա-Օղլուն իր որջէն դուրս բերելու համար։

—Իր այս անգլիացի մը յափշտակելը խիստ ծանր խնդիր է,—ըսաւ մտածկոտ։—Դուն ալ գիտես, թէ ինչպիսի աղմուկ կը բարձրացնեն այս անգլիացի սատայէլները իրենց մէկ հպատակին համար։ Յետոյ՝ հարկ է երևոյթը պահպանել։ Զավուշը կանչեմ և հրահանգները տամ։

Զավուշը եկաւ։

—Տասը հոգի զատէ լաւագոյն մարդոցմէդ,—ըսաւ հակիրճօրէն,—ու Կարա-Օղլուն ինծ բեր, մեռեալ թէ կենդանի. խնդիրը կը դիւրանայ՝ եթէ մեռած ըլլայ։ Երասդոս էֆէնդիի և իր հօր հրամաններուն հնազանդէ։ Լաւ է որ շիտակ քարայրը ուղղուիք (Երասդոս էֆէնդի ճանապարհը գիտէ) և ժամէ մը մեկնիք։

Յետոյ գունդի պետին դարձաւ։

—Բնակարաններուն շուրջը մարդկանց շղթայ մը դիր։ Ձեր գլխով պատասխանատու էք ներսը գտնուող իւրաքանչիւր մարդու, կնոջ և մանկան ապահովութեան համար։

Զօրապետը բարևեց. «Գլխուս վրայ»—պատասխանեց զինուորական համառօտութեամբ մը։ Թէև մեծ ակնկալութիւններ

ունէր թալանելու, որով երկար ատեն անվճար մնացած թոշակն ալ կը փոխարինուէր, բայց չյաջողեցաւ. Էհ, Ալլահ աւելի լաւ գիտէր։ Այսու հանդերձ, անհնարին բան էր շուկայի ճիչերն ու գոչերը լսել և այդ բարի գործը յառաջ վարելու առիթ չունենալ։ Ուսերը թօթուեց և հեռացաւ։

Միս Ուիլսըն անկիւն մը քաշեց զայն և խոշոր քսակ մը բռնեց անոր շլացած աչքերուն։

—Եթէ տասը րոպէէն թիւրք զինուորի մը հանդերձները բերես ինծի, ասոնք քուկդ են,—ըսաւ։—Պէտք է մէկը փոխ տաս ինծի՝ առջևէս հեծնելու։ Երկու ձիերու պէտք ունիմ։ Ատոնցմէ մին՝ զօրագնդիդ լաւագոյնը։

—Ինչո՞ւ համար։

—Քեզ հարկաւոր չէ։ Պիտի ընե՞ս։

Զօրապետը խորհեցաւ։ Վերջապէս բախտը կը ժպտէր իրեն, ու տասն-երկու ամիսներէ ի վեր ալ վճարուած չէր։ Գլուխը շարժեց, ձեռքը քսակին երկարեց ու միս Ուիլսընը խենթ նըկատեց։ Եթէ այս տարօրինակ հանըմը կը սիրէր հայ դիակներուն շուրջը դեգերիլ, այդ իր գործը չէր։

—Հանդերձները համեստ կապէ. լաւագոյն ձին. ու ես կուգամ։

Միս Ուիլսըն խիստ լուրջ էր։

Քանի մը րոպէ վերջ, երբ Երասդոս ու հայրը կը խօսակցէին միասին, միս Ուիլսըն դուրս սողաց տունէն, անկիւնը, և, առաջին անգամ ըլլալով կեանքին մէջ, յաջողեցաւ առանց օգնութեան ձին հեծնիլ en cavalier. Մէկ մտածում ունէր միայն։ Կարա-Օղլու, ասպետական ու նուիրեալ սիրահարը, վտանգի մէջ էր, ու ինք պէտք է փրկէր զայն։ Ամենաթեթև տարակոյսն իսկ չունէր անոր անմեղութեան վրայ. բայց շատ լաւ ծանօթ էր այդ զինուոր կոչուող գազաններուն վայրենի բնաւորութեան, և փոխ-կառավարիչին տուած հրամաններուն ներքին իմաստը ուշադրութենէն վրիպած չէր։ Ուստի՝ զինուոր մը առջևէն՝ Երասդոսէ ու իր մարդոցմէ երեք քառորդ ժամ առաջ ճամբայ ելաւ։

Անմիջապէս որ քաղաքէն դուրս հարթ տափարակը հասան, միս Ուիլսըն, զգալով որ ապահով էր այլ ևս, զինուորին հինգ լիրա տուաւ և յայտնեց, որ ազատ էր ուզած կողմը երթալ։

Զինուորը դրամը առաւ, տենչահար նայուածք մը ուղղեց քաղաքին և տարբեր ճանապարհով մը ետ վերադարձաւ։ Ինքն ալ մաքրելիք հաշիւներ ունէր հոն։ Մնալով առանձին, միս

Ուիլսըն քայլերը ուղղեց քարայրին կողմը։ Ջրուն օրօրուն շարժումը, հակառակ իր բոլոր վախերուն, քուն բերաւ վրան։ Բայց, ջղային ակնկալութեան սարսուռ մը անցաւ վրայէն, երբ մուտքին շուրջը ոտքի նշաններ նկատեց։

Յոգնած ու ցաւահար, վար իջաւ ձիէն, Թուփի մը կապեց զայն ու ներս մտաւ։

Պահ մը՝ ոչինչ կը տեսնէր։ Քարայրին մթութիւնը շփոթեց զինքը և հեռանալու վրայ էր՝ երբ մէկը նշմարեց, յուսահատ երևոյթով, մարող խոշոր խարոյկի մը մօտը նստած։ Օդին մէջ այրած մարմնի արտակարգ բոյր մը կար։ Սարսափահար, միս Ուիլսըն ուրիշ մէկու մը կիսովին խանձած մարմինը տեսաւ խարոյկին միւս կողմը։

Ոտքին ձայնէն, մեռեալ դիակին քովը նստողը գլուխը բարձրացուց։

—Պատրաստ եմ,—ըսաւ հայերէն։—Եթէ կուզէք, եկէք ու առէք զիս։

—Կ...Կ... Կարա-Օղլու, դո՞ւ ես,—հարցուց միս Ուիլսըն, հրճուասարսուռ։—Ի՞նչ կայ։ Չե՞ս կրնար շարժիլ։

Ստահակին ձկնային աչքերէն լուսոյ շող մը արձակուեցաւ։

—Դո՞ւ ես, իմ ազնիւ հրեշտակս... Հիմա պիտի փրկես զիս,—գոչեց, անոր կողմը քաշկռտուիլ փորձելով։

—Փրկե՞լ քեզ... Չեմ... չեմ հասկնար։ Ինչո՞ւ մինակ ես։

—Չե՞ս տեսներ,—ըսաւ հայը վայրագօրէն։—Իմ թանկագին հայրենակիցներս սպասեցին մինչև որ քնանամ, կապեցին զիս, հազար ոսկիս գողցան և ապա ձիովս միասին փախան։ Վախցան թէ...—կանգ առաւ, տեսնելու թէ որքան ծանօթ էր եղելութեան։—Չե՞ս կրնար ձեռքերս քակել,—հարցուց անհամբեր։—Թող միսիոնարը շուտով զինուորներուն հետ հոս կըլլայ, ու ես պիտի սպաննուիմ։ Սպաննուի՜լ... Ո՛հ, դաժանութիւնը ատոր, սպաննե՜լ զի՛ս, որ այնքան գործած եմ հայրենիքիս համար...

Միս Ուիլսըն քայլ մը ևս մօտեցաւ։

—Ուրեմն չլսեցի՞ր կոտորածը. չլսեցի՞ր թէ հայուն կեանքը ժամուան մը արժէքը չունի Սվազի մէջ։

—Գիտէ՜ի թէ պիտի գար։ Ո՛հ, սակայն գլուխս կը կսկըծայ,—ըսաւ մռայլօրէն։—Չե՞ս կրնար անոնց գալէն առաջ քակել զիս։ Բայց օգուտ չունի։ Թերևս ձիս ալ տարած են։

Միս Ուիլսըն զմելին դուրս հանեց։ Այս անկեալ էակը այն խիզախ խմբապետն էր, որ սիրաբանած էր իրեն այնքան

վսեմօրէն։ Ապա՝ իր ունեցած կանացի ցանցառ դատողութիւնը օգնութեան հասաւ։

—Նախ համաձայնութեան մը գանք,—ըսաւ։—Իւրաքանչիւր րոպէն թանկ է։ Զինուորները ժամէ մը հոս կըլլան։ Ես առաջուց եկայ՝ քեզ զգուշացնելու։

Հայը ինքզինքին գալ սկսաւ։ Իր ինտրիգի տաղանդը շուտով վերադարձաւ իրեն։

—Սրիկաները երէկ հեռանալէդ անմիջապէս յետոյ ծեծով անզգայացուցին զիս,—յայտնեց սահուն շեշտով մը։—Ինծի դէմ դժկամակութիւն ունէին, որովհետեւ դրամը փոխանակ իրենց յանձնելու, գործին համար կը պահէի, ազատութեան սրբազան գործին համար։ Հիմա կը հասկնաս, թէ ինչո՞ւ այս թշուառական կացութեան մէջ կը գտնուիմ։

—Շատ լաւ կը հասկնամ,—պատասխանեց միս Ուիլսըն։—Մօրդ ոսկորներով երդուէ (գիտէր թէ այս երդումը ոչ մէկ հայ, քաղաքակիրթ կամ անկիրթ, կը յանդգնէր ոտնակոխ ընել), որ պիտի ամուսնանաս հետս, ու ես պիտի փրկեմ քեզ։ Հարուստ եմ ու կրնամ քեզ երջանիկ ընել։ Ապա թէ ոչ՝ քեզ համար փախչիլ անկարելի է։ Բոլոր նաւահանգիստները փակուած են։ Կարծեմ հեռուէն ձիու տրոփիւն կը լսեմ։ Երդուէ՛, ու պիտի փրկեմ քեզ։

Կարա-Օղլու, զգալով որ մահը սպասում չունէր, մօր ոսկորներով երդուեցաւ միս Ուիլսընի հետ ամուսնանալ, պայմանաւ որ զինքը երկրէն ապահով դուրս հանէր։

Կտրելով չուանը, միս Ուիլսըն ազատեց զայն իր կապանքներէն, վազեց քարայրի մուտքին եւ թիւրք զինուորի մը համազգեստը ձեռքը՝ վերադարձաւ։

—Դեռ ես մէկը չի տեսնուիր,—ըսաւ։—Հագի՛ր ասոնք շուտով, մինչ ես մուտքը կը հսկեմ։

Կարճ ժամանակէն երկայնահասակ, քաջակազմ զինուոր մը միացաւ իրեն։

Այս մարդուն եւ տասը րոպէ առաջուան սողացող երկչոտին միջեւ եղած տարբերութիւնը աննկատ անցաւ միս Ուիլսընի։ Նա միայն անոր գեղեցիկ կազմը եւ չքնաղութիւնը նըշմարեց։ Յանկարծ Կարա-Օղլու յուսահատ ճիչ մը արձակեց։

—Զիս տարած են,—ողբաց։—Աւազակնե՛րը, արիւնարբունե՛րը...

—Իմս հոս է,—ըսաւ միս Ուիլսըն։

Կարա-Օղլու այն կողմը խուժեց, սակայն ատրճանակի մը չարագուշակ փայլէն հանդիպեցաւ։

—Առա՛ջ հեծի՛ր,—ըսաւ միս Ուիլսըն, մէկ ձեռքը սանձին վրայ։

Կարա-Օղլու հնազանդեցաւ։

—Ձիս ետիդ տեղաւորէ։

Դիւրին գործ չէր, բայց այդ ևս ըրաւ։

—Այժմ դէպի Սամսոն,—յայտնեց միս Ուիլսըն։—Անշուշտ տարբեր ճանապարհ մը գիտնալու ես, որպէս զի ուշադրութիւն չհրաւիրենք վրանիս։ Կարծես թէ զէնքի շողշողումներ կը նշմարեմ հեռուն։ Ի՞նչպէս է այս ձին։

Կարա-Օղլու կենդանին շարժունութեան դրաւ։

—Հրաշալի՜ է,—գոչեց հրճուալիր։—Փաշայի մը ախոռէն գողցուած ըլլալու է։

—Աւելի լաւ քեզ համար,—պատասխանեց գերիչը։—Երբ Պոլիս հասնինք, կամուսնանանք և ապա ամերիկեան շոգենաւով մը կը մեկնինք։ Երբ Սամսոնի մօտերը գանք, դուն քովէս կը քալես՝ իբրև իմ պահապան ուղեկիցս։ Անգամ մը այնտեղ՝ կրնաս այլ ծպտում մը առնել։

Կարա-Օղլու դժկամակ հաւանութիւն մը տուաւ։ Պարզ կը տեսնէր, թէ երկրէն կենդանի դուրս ելլելու ուրիշ միջոց չը կար։ Եթէ կոտորածը ընդհանուր էր, ինչ որ տարակուսելու շատ պատճառներ չկային, այն ատեն Պոլսոյ մէջ ալ նոյնքան վտանգի տակ էր, որքան Հայաստան։ Ուստի անօգուտ էր միս Ուիլսընը սպաննել, քանի որ այդ՝ ոսկի հաւկիթ ածող հաւը սպաննել պիտի նշանակէր։ Հետևաբար, որքան շուտ սկսէր անձնուէր սիրահարի դերը, այնքան լաւ էր։

Մինչ խիտ կաղնիներու անտառի մը մէջէն կը սուրային, միս Ուիլսըն ճիչ մը արձակեց և սկսաւ ուժգնօրէն դողալ։

—Ի՞նչ է, գառնուկս,—քնքշօրէն հարցուց Կարա-Օղլու։

—Գի... գիտեմ թէ յիմարութիւն է,—հեկեկաց միս Ուիլսըն,—բայց տղրուկ մը ինկաւ վզիս և վախցուց զիս։

—Ես հոգ կը տանիմ քեզ,—մրմնջեց Կարա-Օղլու քնքշօրէն, ձիուն քայլերը դանդաղելով և քոմնտի ուղի մը մտնելով, որ իրեն ծանօթ էր մինակ։—Տարակոյս չկայ, որ տղրուկներն իսկ գեղեցիկին կը փարին։

Ու շարունակեցին իրենց ուղին։

Երբ հայր ու որդի քարայր հասան իրենց տասը հոգիով և ներսը կարծեցեալներուն անձնատուր ըլլալ գոչեցին, պատասխան չկար։ Թոմփսըն (սա նախորդ երեկոյ դրամը վճարած էր Կարա-Օղլուի, և իրեն ըսուած էր, թէ Քոլըն Քին միւս առաւօտ կանուխ միսիոնարներու բնակարանը կըլլայ) առաջինը ե-

դաւ Երասդոսի հետեւող՝ քարայրը մտնելու, և ածխացած մարմինը ճանչցաւ հառաչով մը։

—Միշտ կը զգայի, որ միս Ուիլսըն բաւական պատասխանատուութիւն ունէր,—յայտնեց պատուելի Ալփէոս Թախծալիր։ —Լաւ անձ մըն էր սա. այժմ գնաց իր վարձատրութիւնը ընդունելու։

Երասդոս, թոյլ ու դողդոջուն, վերարկուն դիակին վրայ նետելով՝ քարայրէն դուրս խուժեց։ Րոպէ մը վերջ հայրը հետեւեցաւ իրեն։

—Իր գերեզմանը հոս կը փորենք,—ըսաւ։—Լաւ է որ Ֆէնէլա կրկին չտեսնէ զայն։

—Ո՛հ, հա՛յր, հա՛յր։ Ու ես թողուցի զինքը... որ ա՛յս բաղդին արժանանայ...

Ծերունին խաղաղեցուց երիտասարդը։

—Պէտք է անմիջապէս թաղել,—ըսաւ խռպոտ ձայնով մը։

—Այդ ծառին տակ աւելի լաւ կ'ըլլայ,—գոչեց երիտասարդը, զինուորներէն մէկուն սուինը առնելով և փորել սկսելով։

Սուինի առաջին մի քանի հարուածները փոքրիկ ծանր պարկ մը դուրս բերին։ Երասդոս անտարբերօրէն վերցուց, բերանը կապուած դերձանը կտրեց, ու մէջէն ափ մը ադամանդներ թափեցան։ Պարկին մէջ տեղաւորեց վերստին։

—Պր. Ֆրոմի կը պատկանէին,—ըսաւ,—և մեր դժբաղդութեանց պատճառն են, հայր։ Լաւ է որ Ֆէնէլայի յանձնես զանոնք։ Աւելի ապահով են քու մօտդ։ Եթէ իմ մօտս մնան, կըրնամ երթալ և ուրիշի մը մահուան պատճառ հանդիսանալ։

Ու շարունակեց փորել։

Պատուելի Ալփէոս ադամանդները առաւ և գրպանը դրաւ։ Ապա նշան ըրաւ զինուորներուն գալ և օգնել գերեզմանը փորելու։

Երբ վերջացաւ, Թոմփսըն տիրոջ մարմինը բերաւ և հողին մէջ զետեղեց ակնածանքով։ Երասդոս ծունր իջաւ հօր մօտը, ու կը զգար, թէ պատրաստ էր աշխարհի մէջ ամբողջ ունեցածը տալ, նոյն իսկ Ֆէնէլայի սէրը, միմիայն մեռելը նորէն կեանքի բերելու։ Զինուորները քիչ մը հեռու կանգնած էին, իրենց հրացաններուն յենած, սուինի ծայրերը հողէն գունատուած։ Թոմփսըն, վշտահար, Երասդոսի մօտ ծնրադրեց։

Պատուելի Ալփէոս գլուխը բացաւ և գերեզմանին մօտեցաւ։ «Ես եմ յարութիւն և կեանք, ըսաւ Տէրը։ Ան որ ինծի կը հաւատայ, թէև մեռած ալ ըլլայ, դեռ պիտի ապրի ան. և ով որ ապրի և հաւատայ ինծի, պիտի չմեռնի երբէք»։

Երբ ամէն ինչ վերջացաւ ու կոյր բանաստեղծին ածխացած մարմինը իր հանգստավայրը դրուեցաւ, պատուելի Ալփէոս գրկեց Երասդոսը և վեր բարձրացուց։

Ցաւահար պատանին ձիերուն ուղղուեցաւ ծանրաքայլ։ Յանկարծ մացառներուն մէջէն կապոյտ հանդերձի կտոր մը դուրս քաշեց։

—Կնոջ մը հանդերձը,—ըսաւ։—Միս Ուիլսըն հոս է եղած։

Զավուշին դարձաւ։

—Բան մը գիտե՞ս այս մասին։

—Ո՛չ, էֆէնդի,—պատասխանեց այս պատուական էակը։—Բայց Սէլիմ մէնէ ժամ մը առաջ մեկնեցաւ մեր երկու ամենալաւ ձիերով։

—Անօգուտ է,—յայտնեց պատուելի Ալփէոս,—անոնք այստեղ գտնելու։ Սակայն Աստուծոյ աղօրիքները պիտի փշրեն զինքը տակաւին, եթէ նոյն իսկ միս Ուիլսըն զինքը Ամերիկա ալ տարած լինի։

Ու, հրացանը վերցնելով, վերադարձաւ Սվազ՝ իր հօտը պաշտպանելու։

. . . . . . . . .

Զորս ամիս վերջ, տէր և տիկին Ուիլսըն (իր ամուսինը, օտարական մը, իր դարձէն վերջ, կնոջ անունն էր առած) Կանադայի փոքրիկ Մօրիսբուրգ քաղաքը դրամ հանգանակելով էին զբաղուած։ Պր. Ուիլսըն, երկայնահասակ, թուխ, գեղեցիկ անձ մը, աչքին վրայ սև նշանով մը և մոխրագոյն մազերով, դեռ ևս խօսած չէր ժողովին։ Իր կինը հոգեմաշ կերևէր։ Ճարտասան բանախօսութեան մը կէսին, յանկարծ թոթովեց, խօսածին թելը կորսնցուց ու նստաւ։ Երասդոսի ու Ֆէնէլայի մտնելն էր տեսած, որոնց կընկերակցէր մաքուր ածիլուած, խորամանկ երևոյթով մէկը, որ ենթադրումով հասկցաւ, թէ գաղտնի ոստիկան մըն էր։

Տիկին Ուիլսըն բան մը փսփսաց ամուսնոյն, որ վայրագօրէն շուրջը նայեցաւ։ Դռնէն զատ ուրիշ ելք չկար սրահէն։ Ոտքի ելաւ, կեղծ մազերն ու աչքի վրայի նշանը վար առաւ ու երևան եկաւ երեսունի մօտ պեղադէմ անձ մը։

—Հոս թղթակիցներ կա՞ն,—հարցուց, ի մեծ շուարումն ներկաներուն։

Տարիքոտ մէկը գլուխը շարժեց։

—Ցաւալի է,—ըսաւ Կարա-Օղլու սինիկ շեշտով մը։—Քանի որ սա դարձի և հանգանակութեան ժողով մըն է, ես ալ կուզեմ իմ դժոխքի փորձառութիւններս պատմել։ Զորս ամիս

ապրեցայ այս կնոջ հետ, ու տառապեցայ իր ժլատութենէն և մշտական նախանձէն։ Հիմա անգլիական ոստիկանութիւնն ինծ կուզէ մարդասպանութեան համար. բայց ես ուրիշ միջոց ունիմ փախ... ահ...

Մատանի մը բարձրացուց շրթներուն, սակայն գաղտնի ոստիկանը, որ ներս սողացած էր, անձնասպանէն աւելի արագ գտնուեցաւ և ետևէն անոր վրայ նետուեցաւ։ Կարճ պայքար մը տեղի ունեցաւ, պողպատի անմիջական շխինդ մը, և մատանին Կարա-Օղլուէն յափշտակուեցաւ։

Երասդոս ու Ֆէնէլա թողուցին սրահը և օթել վերադարձան։ Ատեն մը վերջ տիկին Ուիլսըն հեզօրէն ներս մտաւ ու նստաւ։

—Անգլիա պիտի տանին զինքը,—ըսաւ ամօթահար շեշտով մը։—Բոլորը իմ յանցանքս է։ Եթէ չըլլար իմ թշուառական անափառութիւնս ու նախանձս, կրնայինք Մէկսիկօ կամ այլ անկիւն մը երթալ, ուր անգլիական օրէնքը անոյժ էր մերձենալու։ Սակայն ես ուզեցի խօսիլ ու երևնալ, ու համոզեցի զինքը թէ՝ եթէ ծպտուէր, ամեն ինչ լաւ կըլլար։ Իսկ հիմա ահա վախճանը։ Թէպէտև ես ալ պիտի երթամ հետը։ Միայն կուզէի ձեզի յայտնել, թէ ան... ան չէ սպաննած միւս մարդը. այդ յանցանքը իր վրայ չէ։ Միւս մարդը սպաննած է ինքզինքը, որովհետև Րասդոսի տեղն էր գրաւած և չայն կենդանի խորովել կուզէին...

Ֆէնէլա սարսափի ճիչ մը արձակեց և ամուսնոյն թևերուն մէջ ինկաւ նուաղած։

—Գիշեր բարի՜,—վրայ բերաւ տիկին Ուիլսըն թախծաքէր։—Կուզէի որ Ֆէնէլա լսէր այդ...

Ու դուրս ելաւ։

Ջ. Բ. ԲԸՐՋԻՆ

Թարգմ. անգլ. Մինաս Ցոյակ

(ՎԵՐՋ)

# ԿԱՆԱՉ ՁՈՂԻԿ

---

### ԲՆԱԳՐԻ ՀՐԱՏԱՐԱԿՉԻՑ

*Լեւ Նիկոլայեվիչ Տոլստոյը,—իր մանկական յիշողութիւններում, որոնք զետեղուած են Պ. Ի. Բիրիւկովի կազմած Լ. Ն. Տոլստոյի կենսագրութեան մէջ,—պատմում է այն մասին, թէ ինչպէս նրա եղբայր Նիկոլենկան մի անգամ յայտարարեց իր եղբայրներին, երբ Լեւ Նիկոլայեվիչը 5 տարեկան էր, թէ ինքը մի գաղտնիք ունի, որի շնորհիւ, երբ այդ գաղտնիքը բացվում է, բոլոր մարդիկ երջանկանում են, չեն լինի՝ ոչ հիւանդութիւններ, ոչ անախորժութիւններ, ոչ ոք որեւէ մէկի վրայ չի սրտմտի և ամենքը կը սկսեն սիրել միմեանց, բոլոր մարդիկ կը դառնան* «муравейными братьями» *(մրջիւն եղբայներ)։*

*«Հաւանօրէն, եղել են մորաւեան եղբայրներ,—ասում է Լեւ Նիկոլայեվիչը, — որոնց մասին Նիկոլենկա եղբայրս լսել է կամ կարդացել, բայց մեր լեզուով՝ եղել են* «муравейные братıя». *Եւ ես յիշում եմ, որ* «муравейные» *բառն առանձնապէս դուր էր գալիս, յիշելով մրջիւնների կոյտը։ Մենք մինչև իսկ խաղ էինք սարքում «մրջիւն եղբայրներ» անունով. խաղը կայանում էր նրանում, որ նստում էինք աթոռների տակ, նրանց չորս կողմից պարփակում էինք արկղներով, վարագուրում էինք թաշկինակներով և նստում այնտեղ մթութեան մէջ, միմեանց սեղմուելով։ Ես, յիշում եմ, զգում էի սիրոյ առանձին զգացում ու խանդաղատանք և չափազանց սիրում էի այդ խաղը։*

*«Մրջիւն եղբայրները» յայտնուել էին մեզ,—նկատում է Լեւ Նիկոլայեվիչը,—բայց գլխաւոր գաղտնիքը՝ թէ ինչպէս անել, որպէսզի բոլոր մարդիկ ոչ մի դժբախտութիւն չիմանային, երբեք չկռուէին ու զայրանային, այլ միշտ երջանիկ լինէին, այդ գաղտնիքը, ինչպէս Նիկոլենկա եղբայրս ասում էր մեզ, ինքը գրել է կանաչ ձողիկի վրայ, և այդ ձողիկը թաղուած է ճանապարհի մօտ Ստարիյ Զակազի կողմը, այն տեղում, ուր ես խնդրեցի՝ Նիկոլենկայի յիշատակի համար՝ թաղել ինձ, քանի որ մի տեղ թաղուելու էր դիակս»։*

*(Եասնայա-Պոլեանայի տնից մի վերստ հեռու գտնուող այդ տեղումն էլ թաղուած է Լեւ Նիկոլայեվիչի աճիւնը)։*

*Խորհրդաւոր կանաչ ձողիկի մասին ունեցած իր յիշողութիւնը Լեւ Նիկոլայեվիչը վերջացնում է հետեւեալ խօսքերով.*

*«Սիրով միմեանց հպող «մրջիւն եղբայրների» իդէան գոյութիւն ունի ոչ միայն թաշկինակներով վարագուրուած երկու բազկաթոռների տակ, այլ ամբողջ երկնակամարի տակ գտնուած աշխարհի համայն մարդ-*

կանց համար, մնաց միևնոյնը ինձ համար։ Եւ ինչպէս այն ժամանակ էի հաւատում, թէ կայ այդ կանաչ ձողիկը, որի վրայ գրուած է, թէ հարկաւոր է ոչնչացնել մարդկանց մէջ եղած ողջ չարիքը և տալ նրանց մեծ երջանկութիւն, այնպէս էլ հաւատում եմ այժմ, որ կայ այդ ճշմարտութիւնը և որ նա կը յայտնուի մարդկանց ու կը տայ նրանց իր խոստացածը»։

Ներկայ յօդուածը «Կանաչ ձողիկ» անուանելով, Լեվ Նիկօլայեվիչը, հաւանօրէն, գտնվում էր իր մանկութիւնից նկարագրուած դէպքի յիշողութիւնների տպաւորութեան տակ։

Սոյն յօդուածը Լեվ Նիկօլայեվիչը վերջնականապէս մշակուած չէր համարում, այդ պատճառով էլ չի տպագրուել իր կենդանութեան ժամանակ։ Իսկ ներկայումս առանձին նշանակութիւն է ստանում, իբրև Լեվ Նիկօլայեվիչի դիմումն գերեզմանից մարդ-եղբայրներին։

I

Եթէ մարդ երկարատև քնից յետոյ, որի ժամանակ մոռացել է միանգամայն անցեալում եղած ամէն ինչ, արթնանար նոր, իրան անծանօթ բնակարանում, ուր բնակում են իր նրման արարածներ, այսինքն՝ մարդիկ և կենդանիներ, որոնք անդադար տքնում են՝ աշխարհային ունայնութեանց ետևից ընկած, այդ դէպքում առաջին անգամ ինչ կանէր վերոյիշեալ մարդը.—անշուշտ կաշխատէր ըմբռնել, թէ ով և ինչու համար տեղաւորեց իրան՝ այդ նոր, օտարոտի վայրում, և թէ ինքն ինչ է անելու այստեղ, ինչպէս է գործադրելու այն ոյժը և գործունէութեան պահանջը, որ զգում է նա իր մէջ։ Այս հարցերի պատասխանը կը լինի այն, որ կոչվում է կրօն։ Եւ առանց այդ պատասխանների՝ բանական մարդն անկարող է այս աշխարհում լաւ ապրել։

Ո՞վ տեղաւորեց ինձ այս օտարոտի վայրում։

Չգիտեմ և չեմ կարող իմանալ։ Բայց անկասկած գիտեմ՝ կայ մէկը, որ և տեղաւորեց ինձ այս աշխարհում։ Այդ գիտեմ անտարակոյս, որովհետև ես իմ կամքով չէի կարող յայտնուել այս աշխարհում, որովհետև ես երբէք չէի ցանկանում այդ և չէի էլ կարող ցանկանալ, քանի որ ես, մինչև այս աշխարհ գալս, կարծես գոյութիւն չունէի, կամ, յամենայն դէպս, ոչինչ չեմ յիշում այն մասին, թէ առաջներում՝ երբևիցէ ես եղել եմ։ Եթէ հարց տամ, թէ Երբ սկսուեց իմ եՍ-ը, ներկայ եՍ-ը, այդ դէպքում կը ստանամ աւելի նուազ գոհացուցիչ պատասխան։ Ինձասում են, որ ես յայտնուեցի մի քանի տարի առաջ՝ մօրս արգանդից։ Բայց այն, ինչ որ մօրս արգանդից յայտնուեց, իմ մարմինն է, այն մարմինը, որ երկար ժամանակ ոչինչ չգիտէր և չգիտէ այժմ իսկ իր գոյութեան մասին և որը շատ շուտով,

գուցէ հէնց վաղը, կը թաղուի հողի մէջ և հող կը դառնայ։ Իսկ այն, ինչ որ համարում եմ իմ ես-ը, մարմնիս հետ միաժամանակ չի յայտնուել։ Իմ այդ ես-ը ոչ մօրս արգանդում սկսուեց, ոչ արգանդից դուրս գալուց յետոյ, երբ կտրեցին պորտս, ոչ ծծից կտրելու և ոչ էլ այն ժամանակ, երբ խօսել սկսեցի։ Այսքանը գիտեմ միայն, որ այդ ես-ը սկսուեց երբեմն, և, միևնոյն ժամանակ գիտեմ, որ այդ ես-ը միշտ եղել է։ Այնպէս որ՝ անկարող եմ իմ ներկայ ես-ը ժամանակի մէջ գտնել. արդեօք բոլորովին մօտերքում պէտք է որոնեմ նրան թէ՞ անսահման հեռուները։ Թւում է, թէ ես երբէք չեմ յայտնուել, այլ միշտ եղել եմ և կամ միայն մոռացել եմ իմ նախկին կեանքը։

Այնպէս որ՝ դրականօրէն անկարող եմ ասել, թէ ինչ եմ ես։ Այսքանը գիտեմ միայն, որ ես և իմ մարմինը միևնոյն բաները չեն։

Երկրորդ հարց. ինչ է այն աշխարհը, ուր, բանականութեան հասնելով, գտայ ինքս ինձ։

Այդ աշխարհը՝ Երմիլների կամ Տօլստոյների ընտանիքն ու տունը չէ Եասնայա Պոլեանայում, և ոչ էլ Բաուէրների տունն ու տեղը՝ Բավարիայում, կամ Շմիտներինը՝ Անգլիայում, կամ Ռօբինզօններինը՝ Օհայիօում (Ամերիկա), կամ Ֆօ-Խանչիններինը՝ չինական գիւղում կամ Պեկինում. այդ ահագին, ընդարձակ աշխարհը պատկանում է այն բոլոր մարդկանց, որոնք բնակում են մոլորակ երկրագնդի վրայ՝ թէ Սիամում, թէ Իսլանդիայում, թէ Մադագասկարում և թէ այն բոլոր տեղերում, որ գիտեմ, և տեղեր, որոնց մասին ոչինչ չգիտեմ։ Եւ այդ աշխարհը կազմում են ոչ թէ լոկ այն 1500 միլիօն մարդիկ, որոնք, ինչպէս լսել եմ, բնակւում են այժմ երկրի վրայ, այլ և այն միլիարդ մարդիկ, որոնք ապրել են երբեմն՝ ինձանից առաջ՝ ինձ յայտնի ժամանակաշրջանում և ինձ անյայտ՝ հազարաւոր տարիներ առաջ ապրող մարդիկ, ինչպէս և այն մարդիկ, որոնք ծնվում, աճում են այժմ և որոնք կապրեն դեռ անհուն տարիներ, երբ իմ ոսկրներից նշանախեց անգամ չի մնայ։ Ահա հէնց այդ բոլոր մարդիկ, բացի այդ, դեռ բազմազան կենդանիների անհամար տեսակները, մանրադիտական ճիճուներից սկսած մինչև փղերն ու գետաձիերը, նմանապէս և բոյսերի անթիւ տեսակներն ու անկենդան իրերը՝ ոչ միայն երկրագունդ մոլորակի, այլ և նրանից դուրս, ուրիշ մոլորակների՝ և՛ արեգակների, և՛ միլիօնաւոր աստղերի վրայ եղածները, որոնք գտնվում են անհուն տարածութեան մէջ, շրջապատում են երկրագունդը և տարածուած են անսահման ժամանակով, — ահա

հէնց այդ է կազմում այն աշխարհը, ուր յայտնուեցի ես և որը տեսայ այն միջոցին, երբ իմ մէջ արթնացաւ բանականութիւնը։

Ե՛ւ ժամանակով, և՛ տարածութեամբ ամեն կողմից այդ անսահման աշխարհում ես յայտնուեցի երէկ, կամ—մեր հաշուով—10, 20, 30, 40, 50 տարի սրանից առաջ, ինչպէս լսել եմ մարդկանցից։ Իմ յայտնուելու պատճառը հօրս ամուսնութիւնն է եղել մօրս հետ, և, որպէս գիտեմ ուրիշ մարդկանցից, ես սկզբում եղել եմ սաղմն, յետոյ մանուկ, երեխայ, պատանի և ապա տղամարդ։ Իսկ թէ ե՞րբ յայտնուեց այն ես-ը, որին ճանաչում եմ յանձին իմ, չեմ կարող ասել։ Ինձ թւում է, թէ ես միշտ եղել եմ։ Թէ ե՞րբ կը վախճանուեմ, դարձեալ անկարող եմ ասել։ Մարդկանց վերաբերմամբ արած դիտողութիւնից ես գիտեմ, որ հաւանօրէն մեռնելու եմ 70—80 տարուց յետոյ. գիտեմ, որ ամեն օր, ամեն ժամ մօտենում եմ մահուան. գիտեմ, որ ամեն վայրկեան կարող եմ մեռնել։ Սակայն չնայած որ գիտեմ և տեսնում եմ այդ՝ բոլոր մարդկանց նկատմամբ, այնուամենայնիւ չեմ հաւատում, որ կարող է իմ ես-ը վախճան ունենալ։

Բայց եթէ այդպէս է, ուրեմն և այս աշխարհում ես միշտ չեմ եղել։ Սակայն ինչո՞ւ համար յայտնուեցի ես այս աշխարհում։ Եւ ի՞նչ պէտք է անեմ այստեղ։

Տարածութեամբ և ժամանակով այս անսահման աշխարհում ի՞նչ կարող եմ անել չնչին մարմնովս և կեանքիս աննշան ժամանակամիջոցում։

Այս հարցի ամենասովորական պատասխանը, որ ներկայանում է անասնական կեանքով ապրող մարդուն՝ մինչև իր բանականութեան արթնանալը, նրանումն է կայանում, որ նա ապրում է՝ ուտելու, խմելու, քնելու, ուրախանալու, ապա ընդհանրապէս, հրճուելու բոլոր այն մարմնական հաճոյքներով, որ տալիս է կեանքը։ Սակայն մարդս պէտք է իր շուրջը նայի և մտածի այն մասին, թէ ի՞նչ է սպասում իրան, որպէսզի հաստատ համոզուի, թէ մարմնական երջանկութիւնը չի կարող կեանքի կոչումը լինել, որովհետև՝ կռուի, ամեն տեսակ դժբախտութեան, հիւանդութեան, անդիմադրելի մահուան դատապարտուած էակի համար այդպիսի երջանկութիւն չի կարող լինել։ Ի՞նչ երջանկութիւն կարող է լինել կեանքի մէջ. կեանքի, որ անխուսափելի կերպով տանում է մարդկանց դէպի տկարութիւն, ծերութիւն և մահ։ Եւ դրա համար էլ՝ ո՛չ հրճուանքը, ո՛չ ընդունակութիւնների կատարելագործումը, ո՛չ մեծ գործ կատարելը, ո՛չ մինչև իսկ հասարակական երջանկու-

թեան աջակցելը չի կարող կեանքի կոչումը լինել։ Այդ բոլորը կարող էր լինել, եթէ աշխարհը ժամանակով ու տարածութեամբ անվախճան չլինէր և եթէ մահը չլինէր։ Տարածութեամբ և ժամանակով անսահման տիեզերքի մէջ՝ այս սահմանափակ և կարճ կեանքումս՝ մարդկային գործերիս մէջ չկայ որևէ միտք և չի էլ կարող լինել։ Եւ ինչո՞ւ պէտք է մարդ տքնի՝ իր կեանքը բարելաւելու համար, երբ նրա ամբողջ գործունէութիւնը մի աննշմարելի կէտ է անվախճան տիեզերքի մէջ, և երբ կեանքն ինքը՝ մի ակնթարթ միայն՝ երկու յաւիտենականութեան միջև։ Եւ ինչո՞ւ պէտք է մարդ աշխատանք գործ դնի ուրիշների կեանքը բարելաւելու համար, երբ նա անկասկած կը մեռնի և չի տեսնի՝ ո՛չ այդ բարելաւ կեանքը, ո՛չ իսկ երախտագիտութիւն նրանց ցոյց տուած լաւութեան փոխարէն։ Անհետ պէտք է կորչեն նրանք ևս, որոնց ես բարիքներ եմ արել։

Այնպէս որ՝ եթէ ես լուրջ կերպով հարց տամ և լուրջ պատասխանեմ, իմ հարցերի պատասխանները հետևեալները կը լինեն.

1) Առաջին հարցի պատասխանը—թէ ի՞նչ է ես-ը—ա՛յն կը լինի, որ դա, ըստ երևոյթին, ոչ վաղուց սկսուած, ժամանակաւոր, ոչնչացող մի բան է, որ և շատ շուտով պէտք է ոչնչանայ, բայց, այն ինչ, նա անկասկած գոյութիւն ունեցող մի բան է, առանց որի ոչինչ գոյութիւն չէր ունենայ։ Ու բանից դուրս է գալիս, որ ես չգիտեմ, թէ ի՞նչ է ես-ը, և, միևնոյն ժամանակ, այդ այնպիսի մի բան է, որ ես անկասկած ամէն բանից աւելի լաւ եմ ճանաչում։

2) Երկրորդ հարցի պատասխանը—ի՞նչ է ա՛յն աշխարհը, ուր գտնում եմ ինձ իբրև ապրող էակի—դա իր անհունութեամբ, ժամանակով և տարածութեամբ ինչ-որ անմիտ բան է, որ անշուշտ երբեմն սկսուել է և մի ժամանակ էլ կը վերջանայ, բայց մինչդեռ երբէք չէր կարող սկսուել և երբէք չի կարող վերջանալ. բացի այդ՝ ըստ տեղի նոյնպէս անկասկած՝ որևէ տեղ վերջանում է, սակայն, միևնոյն ժամանակ, ո՛չ մի տեղ չի կարող վերջանալ։ Մի խօսքով՝ կամ ինչ-որ անիմաստ, կամ ինձ անմատչելի խնդիր է, այսինքն ես միանգամայն չգիտեմ, թէ ի՞նչ բան է աշխարհը, իսկ միևնոյն ժամանակ շրջապատուած եմ նրանով, ապրում եմ նրա մէջ և նրա մէջ էլ պարտաւոր եմ գործել։ Այս էլ երկրորդ հարցին։

3) Երրորդ հարցի պատասխանը—թէ ի՞նչ պէտք է անեմ—կը լինի հետևեալը. ա՛յն ամէնը, ինչ որ կամենում եմ անել՝ այս աշխարհում սկիզբն առած և նրա մէջ վերջացող էակի եր-

ջանկութեան համար, որ համարում եմ ինձ, ի զուր է և անիմաստ։ Իսկ ա՛յն էակի համար, որ երբէք չի սկսուել ու միշտ կայ և նոյն բանը չէ, ինչ իմ մարմինը, որի հետ նա կապուած է, ա՛յդ էակի համար ոչինչ հարկաւոր չէ։ Այնպէս որ՝ իմ կեանքն ինձ համար, այսինքն նրա համար՝ որ իմ ես-ն եմ համարում, ոչ մի նշանակութիւն չունի և չի էլ կարող ունենալ. Նշանակութիւն ունենալ չի կարող և ա՛յն աշխարհի համար, որի մէջ ես եմ ապրում. հարկաւոր չէ որևէ բան անել՝ ո՛չ ինձ համար, ո՛չ էլ աշխարհի համար, և ոչինչ օգտաւէտ չի կարելի անել։

Չէ՞ որ եթէ միայն ես մոռանամ կայսեր, բանուորի, դատաւորի, գործարանատիրոջ, պրոֆեսորի, գեղարուեստագէտի, ընտանիքի անդամի կոչումս և յիշեմ մի բան, որ ես մարդ եմ՝ ոչ վաղուց յայտնուած այս անհասկանալի աշխարհում և շատ շուտով պարտաւոր եմ չքանալ նրանից, նշանակում է, ուրեմն, որ այս կեանքում չկայ ոչ մի խելացի նպատակ, և չարժէ ոչինչ անել։ Բոլորը փուչ է և անկարևոր։ Այն ամենը, ինչ պէտք է անես, անիմաստ կը լինի. բայց, միևնոյն ժամանակ, քանի կենդանի ես, պէտք է որևէ բան անես։ Ամբողջ կեանքը մարդու գործունէութիւնն է աշխարհի մէջ, ինչպէս ձիու գործունէութիւնը՝ անիւը շուռ տալու համար։ Ձին չի կարող չգնալ, որովհետև այդ դէպքում չեն շարժուի անիւները։ Նոյնպէս էլ մարդը չի կարող որևէ բան չանել և իր իսկ գործունէութեամբ չմասնակցել ողջ աշխարհի շարժմանը։ Այնպէս որ, չնայած ինձ, մարդու և ամբողջ աշխարհի համար, որ կողմն էլ դառնաս, իմ կեանքն անիմաստ է, այնուամենայնիւ ես պարտաւոր եմ գործել։ Մի ինչ-որ ոյժ ինձ այնպիսի դրութեան մէջ է դրել, որ ես պէտք է գործեմ՝ ո՛չ ինձ համար, ո՛չ էլ աշխարհի, այլ ինձ անհասկանալի ինչ-որ բանի համար։ Ահա այդ գիտակցութիւնն է կազմում իւրաքանչիւր ճշմարիտ կրօնի էութիւնը։

Այդ գիտակցութիւնն ասում է, թէ կայ՝ ինձ այս աշխարհն ուղարկող մի ինչ-որ ոյժ։ Դրա մէջ է կայանում ճշմարիտ կրօնի էութիւնը։ Եւ ահա հէնց այդ ոյժի խոստովանութիւնն է, որ լուծում է ամբողջ գործը և մարդկային կեանքին իմաստ տալիս. խոստովանութիւն ա՛յն ոյժի, որ ինձ աշխարհ ուղարկեց և որին Աստուած են անուանում։ Իմ կեանքն ինքն ըստ ինքեան անհասկանալի է, այնպէս էլ ինձ անհասկանալի է և՛ ամբողջ աշխարհի կեանքը։ Բայց ես ապրում եմ և պարտաւոր եմ գործել մի ինչ-որ գերագոյն ոյժի կամքի համաձայն։ Եւ

եթէ ինձ համար իմ կեանքն անհասկանալի է, ու ինձ, կամ աշխարհի համար դրուած նպատակներն անիմաստ են ինձ համար, ապա ուրեմն իմ կեանքը, ինչպէս և այն աշխարհի, որի մէջ ապրում եմ ես, չի կարող և չպէտք է անիմաստ լինի այն գերագոյն ոյժի համար, որ ինձ՝ անըմբռնելիիս աշխարհ ուղարկեց և որ ղեկավարում է ինձ համար անիմանալի աշխարհի կեանքը։

Հարկաւոր է միայն ճանաչել այդ գերագոյն ոյժը, և ամեն ինչ կը պարզուի. իմ կեանքի, ինչպէս և աշխարհի վերջնական նպատակները ծածկուած են ինձանից, անմատչելի են ինձ (նրանք չեն կարող մատչելի լինել սահմանափակուած էակին)։ Ես և ամբողջ աշխարհը միմիայն գործիք ենք՝ ինձ անմատչելի նպատակներին հասնելու համար։ Եւ իմ կեանքի իմաստն արդէն կայանում է ո՛չ թէ վերջնական, ինձ անմատչելի նպատակների, այլ ինձ համար անյայտ այն նպատակի իրագործման մէջ, որի համար ապրում եմ ես. այսինքն ճանաչել այդ գերագոյն ոյժը և ծառայել նրան։ Ճանաչել Աստուծուն և կատարել Նրա կամքը։

II

Ինչումն է կայանում Աստուծու կամքը կատարելը։ Սովորեցնում են, թէ Աստուած յայտնուեց մարդկանց՝ կամ Մովսէսի, կամ Քրիստոսի և կամ Բուդդայի միջոցով։

. . . . . . . . . . .

Աստուած ոչ մի տեղ միանգամից երևան չի հանել Իր կամքը, Իր օրէնքը՝ մի մարդու կամ մարդկանց խմբին։ Աստուած միշտ յայտնվում է բոլոր մարդկանց, այն ամենքին, որոնք փնտռում են Նրան։ Նա յայտնվում է իւրաքանչիւր մարդու՝ հէնց վերջինիս սրտում։ Ամեն մարդ կրում է իր մէջ Աստուծուն,—կեանքի այն սկզբունքը, որ մարմին չէ, բայց ապրում է մարդու մարմնի մէջ և որը չունի՝ ո՛չ կշիռ, ո՛չ չափ, ո՛չ գոյն, ո՛չ համ ու հոտ, և որը երբէք չի սկսուել և երբէք չի վերջանում։ Կեանքի այդ սկզբունքը մարդու մէջ սահմանափակուած է իր իսկ մարմնով և Ամբողջի մի մասն է միայն։ Բայց և շնորհիւ այդ մի մասի՝ մարդ կարող է ճանաչել Ամբողջը։ Ամբողջը՝ դա ինքն Աստուած է։ Մարդ կրում է իր մէջ այդ Ամբողջի մասը և այդ պատճառով էլ ճանաչում է Աստուծուն, չի կարող չճանաչել Նրան։

Իսկ եթէ ճանաչում է Աստուծուն, ուրեմն ճանաչում է նաև Նրա օրէնքը։ Աստուծու օրէնքը գրուած է՝ ոչ թէ որևէ գրքում, այլ հէնց կեանքի, մարդու ճակատագրի մէջ։ Մարդկանց թւում է, թէ չգիտեն օրէնքը կամ սխալվում են՝ Աստուծու օրէնքը ճանաչելու գործում (ոմանք այս-ինչ բանն են համարում Աստուծու օրէնքը, ոմանք՝ այն-ինչը) սոսկ այն պատճառով, որ մարդիկ փակում են աչքներն՝ իրանց դրութեան վրայ, չեն կամենում տեսնել Նրան կամ ուզում են տեսնել Նրան ոչ այնպէս, ինչպէս որ կայ։ Եթէ մարդ գալիս է երկաթուղու կայարան և, տեսնելով կանգնած շոգեկառքը, մտնում է ներս, և, երևակայելով որ այդ իր տունն է, սկսում է ամեն ինչ կարգաւորել՝ բնակութեան յարմար դարձնելու համար, մտադրուելով Նրա մէջ անցկացնել իր կեանքը, ապա ուրեմն հաւանօրէն կը զարմանայ և կը տխրի, երբ շոգեկառքը շարժուի ու յաջորդ կայարանը հասնի, և երբ հրամայեն նրան՝ դուրս գալ իր սարք ու կարգով։ Մարդը կարող էր տեսնել և իմանալ, որ շոգեկառքը տուն չէ, այլ միայն տեղափոխութեան միջոց, և որ տեղափոխութեան համար պէտք է կատարել դրուած պայմանները. այսինքն՝ վճարել և վարուել՝ համաձայն երկաթուղային կանոնների։ Մարդկանց մեծ մասն այդ ձևով կեղծում է կամ բոլորովին չի ըմբռնում իր դրութիւնը կեանքի մէջ։ Եւ հէնց բանն էլ Նրանումն է, որ մարդիկ չեն ըմբռնում իրանց դրութիւնը։

Աւետարանում այգու մշակների մասին կայ մի առակ, որի մէջ ասուած է, թէ մի ագարակատէր այգի տնկեց և ցանկով պատեց, ջրհոր փորեց այնտեղ, աշտարակ շինեց, յանձնեց մշակներին այն պայմանով, որ նրանք այգու պտուղներն իրան տան։ Իսկ մշակներն այգուն տիրանալով՝ կարծեցին, թէ այգին իրանց սեփականութիւնն է, իրանք ոչ մէկի առաջ ոչնչով պարտական չեն, և արտաքսեցին, մինչև իսկ սպանեցին պտուղների ետևից ուղարկուած ագարակատիրոջ մարդկանց։ Երբ ագարակատէրն այդ իմացաւ, նա դուրս վռնտեց մշակներին։ Այնպէս որ՝ մշակներն իրանց կեանքը խորտակեցին նրանով, որ չըմբռնեցին իրանց դրութիւնը։

Նոյն բանն էլ մարդկանց հետ է պատահում։ Միայն ոչ թէ ուրիշ որևէ մէկը, այլ Նրանք իրանք են թշուառացնում իրանց։ Միայն կեանքի մէջ ունեցած իրանց դրութեան պարզ գիտակցութիւնն է բաց անում մարդկանց առաջ Աստուծու օրէնքը։ Մարդը կարող է ասել, որ ինքը Աստուծուն չի ճանաչում, բայց ասել թէ Աստուծու օրէնքը չի ճանաչում՝ անկարող է, որովհետև Աստուծու օրէնքն է կառավարում Նրա, ինչպէս և

իւրաքանչիւր էակի կեանքը, և մարդ, եթէ մտքով իսկ կարող է չճանաչել այդ օրէնքը, չի կարող սակայն չզգալ Նրա գոյութիւնը։

## III

Բոլոր մարդիկ ցանկանում են ապրել ուրախ, սիրով ու համերաշխութեամբ, չհիւանդանալ, չտանջուել, չմեռնել, մինչդեռ ամենքն ապրում են անջատ, միմեանց հետ ատելութեամբ, բոլորը հիւանդանում են, բոլորը տանջվում են ու մեռնում։ Ի՞նչ է պատճառը։ Ինչո՞ւ համար Աստուած մարդկանց ստեղծեց այնպէս, որ Նրանք ամենքը բարի են ցանկանում, այն ինչ բոլորը տանջվում են։ Ինչի՞ց է այդ։

Քրիստոսի վարդապետութիւնը տալիս է հարցի պատասխանը. Քրիստոս ասում էր, թէ մարդիկ ողորմելի են այն պատճառով, որ Նրանք յոգնած են ու ցրուած, ինչպէս անհովիւ ոչխարներ, և Նա կանչում է Նրանց իր մօտ և ամենքին երջանկութիւն խոստանում։ Նա ասում է. «Եկէք Ինձ մօտ, բոլոր վաստակեալներ և ծանրաբեռնուածներ, և Ես կը հանգստացնեմ ձեզ։ Վերցրէք Իմ լուծը ձեզ վրայ և սովորեցէք ամենքդ Ինձանից, որովհետև Ես հեզ եմ ու սրտով խոնարհ, և հանգստութիւն կը գտնէք ձեր հոգու համար»։ Քրիստոս ասում է մարդկանց, թէ բոլոր թշուառութիւններն առաջանում են Նրանից, որ Նրանք չեն ըմբռնում իրանց դրութիւնը, չեն պատկերացնում ա՛յն, ինչ որ կայ, մոռանում են իրանց ո՛վ լինելը. և եթէ Նրանք ըմբռնէին իրանց դրութիւնը և յիշէին այդ, այն դէպքում Նրանց կեանքը տանջանք չէր լինի, այլ բերկրանք։

Այդ արտայայտուած է Աւետարանում շատ անգամ, այդ յատկապէս պարզ կերպով ասուած է այգու մշակների մասին պատմուած առակի մէջ. ագարակատէրն այգի տնկեց, ամեն ինչ կարգաւորեց Նրանում (այգին՝ աշխարհն է, ագարակատէրը՝ Աստուած) և այգին յանձնեց մշակներին ա՛յն պայմանով, որ Նրանք աշխատեն այգու մէջ և իրան պտուղ տան։ Սակայն մշակները մոռացան, որ այգին իրանց սեփականութիւնը չէ, և որ իրանք կարող են օգտուել Նրա պտուղներից միայն ա՛յն պայմանով, որ սահմանուած բաժինն այգետիրոջ յանձնեն։ Եւ երբ այգետէրը պահանջեց այգու պտուղները, մշակները չտուին պտուղները, այլ և վռնտեցին Նրա մարդկանց։ Այն ժամանակ

այգետէրը դուրս արաւ նրանց, և նրանք դժբախտացան։

Այդպէս էլ դժբախտանում են մարդիկ, երբ նրանք երեւակայում են, թէ կեանքը իրանց սեփականութիւնն է, և ամեն ոք կարող է վարուել նրա հետ՝ ինչպէս կամենայ, չկատարելով այն, ինչ սպասում էր՝ նրան կեանք տուող Աստուած։

Ձիրքերը, ինչպէս և կեանքը, տրուած են միայն նրա համար, որպէսզի գործադրուեն։ Նա, ով չի աշխատում կեանքի մէջ, զրկվում է այն ամենից, ինչ որ պարգևել է Տէրը. իսկ ով Աստուծու համար է աշխատում, նա միշտ աւելի ու աւելի է ստանում։

Նոյն բանն է ասուած նաև կառավարչի մասին պատմուած առակում, որին տանտէրը յանձնում է իր տունը։ Կառավարիչը, փոխանակ տան վրայ հոգս տանելու, սկսեց զուարճութեան ետևից ընկնել և վատնել տանտիրոջ գոյքը։ Եւ տանտէրը պատժեց նրան՝ արտաքսելով։

Այդ առակների մէջ ասուած է այն, ինչ որ մարդուն չի վերաբերում. իսկ դաշտից վերադարձող ստրկի առակում ցոյց է տրուած, թէ ինչպէս և ինչով է պարտաւոր իւրաքանչիւր մարդ հասկանալ իր աշխարհային պարտականութիւնը։

Այդ առակում ասուած է. «Դաշտում վար անող կամ արածացնող ստրկին՝ տուն վերադառնալուց յետոյ՝ ձեզնից ո՞վ կասի. եկ շուտով, ճաշի նստիր»։

Ընդհակառակը, արդեօք նրան չի՞ ասի. ընթրիք պատրաստի՛ր ինձ համար և գօտեւորուած ծառայի՛ր ինձ, քանի դեռ ուտում ու խմում եմ, և ապա կեր ու խմիր ինքդ։

Նա շնորհակալութիւն կը յայտնի՞ ստրկին՝ իր հրամանը կատարելուն համար. չեմ կարծում։

Այնպէս էլ դուք, երբ կատարում էք բոլորը, ինչ հրամայուած է ձեզ, կասէք. մենք անարժէք ստրուկներ ենք, որովհետև արինք այն, ինչ պարտաւոր էինք անել (Ղուկաս XVII, 7, 8, 9, 10)։

Քրիստոսի վարդապետութեան ամբողջ էութիւնն այն է, որ մարդ հասկանալ կարողանայ իր դրութիւնը։

Եթէ նա իր դրութեան նկատմամբ անգիտանայ, ինչ էլ անելու լինի, որքան էլ աշխատի իր բախտը տնօրինել, այնուամենայնիւ անկարող կը լինի լաւ հետևանքի հասնել, ճիշտ այնպէս, ինչպէս մշակը, որ չի կատարում իրան վարձողի պայմանները։

Սակայն երբ մարդ ըմբռնում է իր դրութիւնն ու հասկանում, որ ինքն իր կեանքի տէրը չէ, այլ միայն ստրուկ և

Աստուծու որդի և դրա համար էլ պարտաւոր է կատարել Աստուծու առաջ իր պարտականութիւնները, ա՛յն ժամանակ միայն կարող է նա լաւ հետևանքի հասնել նաև կեանքի մէջ։

Հէնց այդ էլ ասուած է Աւետարանի էջերում. որոնեցէք Աստծու արքայութիւնն ու նրա արդարութիւնը (այսինքն ա՛յն, ինչ որ Աստուած է ցանկանում), իսկ մնացած բոլորը կը տրուի ձեզ (այսինքն կը ստացուի ա՛յն ամենը, ինչ հարկաւոր է մարդկանց բարօրութեան համար)։

Որպէսզի մարդ կարողանայ հնարաւոր եղածին չափ բարիք ստանալ, պէտք է նա չխաբի իրան և ըմբռնի իր դրութիւնը։

Ի՞նչն է մարդու իսկական դրութիւնն աշխարհում և ի՞նչն է ա՛յն խաբէութիւնը, որ մարդուն դժբախտ է դարձնում։

Խաբէութիւնն ա՛յն է, որ մարդիկ չեն մտաբերում մահը, մոռանում են, որ իրանք այս աշխարհում չեն ապրում, այլ անցնում են։ Այդ խաբէութեան մէջ են գտնվում երեխաները և շատ անգամ մինչև իսկ հասակաւոր մարդիկ։ Յաճախ հասակաւոր մարդիկ նոյնիսկ մինչև ծերութիւնը չեն մտածում մահուան մասին, ապրում են այնպէս, կարծես մահ չլինի, այնպէս են հաւատացած, որպէս թէ յաւիտեան ապրելու են։

Միակ իմաստը, որ կարող է իր մահը չմոռացող մարդը տալ կեանքին, նրանումն է կայանում, որ նա անկախ էակ չէ, այլ միայն Աստուծու կամքի գործիք։ Նրա կամքով յայտնուեց մարդը՝ ժամանակով և տարածութեամբ այս անվախճան աշխարհում և պարտաւոր է մնալ մի առ ժամանակ ու անյայտանալ։ Եթէ այդպէս է, ապա ուրեմն պարզ է, որ կեանքը կարգաւորելու համար ապրելն՝ անմտութիւն է. միայն մի բան իմաստ ունի—կատարել այս աշխարհն ուղարկողի կամքը՝ այդ կամքի նպատակն իրագործելու համար։ Ո՞րն է սակայն այդ նպատակը։ Վերջնական նպատակը ես իմանալ չեմ կարող, որովհետև նա ծածկուած է ինձանից անհունութեան մէջ, բայց նրան հասնելու միջոցը ես կարող եմ իմանալ։ Հասնելու միջոցը՝ ա՛յն իսկ ձգտումն է դէպ երջանկութիւն, որ իմ կեանքի էութիւնն է կազմում. սակայն ոչ թէ իմ, այլ ամբողջ աշխարհի երջանկութիւն։ Ա՛յն նպատակը, որ մատչելի է ինձ, ողջ աշխարհի երջանկութիւնն է, իսկ իմ ձգտումը դէպ երջանկութիւն՝ դա մի ցուցմունք է, թէ ես ի՞նչ պէտք է որոնեմ ամբողջ աշխարհի համար։

Այնպէս որ՝ երբ մարդ պարզ կերպով ըմբռնում է իր դրութիւնն աշխարհում, այն ժամանակ նրա մէջ ծագում է հա-

ւատ առ Աստուած և Նրա օրէնքը։ Մարդու իր դրութիւնը գիտակցելուց էլ ըստ ինքեան առաջ է գալիս՝ Աստուծու կամքին հնազանդուելը, բոլոր մարդկանց հաւասարութեան խոստովանութիւնը, նրանց վերաբերմամբ ցոյց տրուելիք սէրն ու ծառայութիւնը և կեանքի հիմնական օրէնքները. այսինքն՝ անել ուրիշների համար այն, ինչ որ հաճելի է նրանցից սպասել։

Մարդու իր դրութիւնը գիտակցելուց բղխած ամբողջ աստուածային օրէնքը՝ ոչ այլ ինչ է, բայց եթէ հնազանդուել Աստուծու կամքին, սիրել և ծառայել մերձաւորին։ Այս է կազմում ամէն մի հաւատի հիմքը։ Այդ չի նշանակում, թէ չեն կարող լինել ուրիշ շատ կարևոր կրօնական կանօններ ևս, որոնք կազմում են այդ օրէնքի յաւելուածը՝ կեանքի զանազան դիպուածներում գործադրուելու համար։ Այդպիսի կանօններ կան հնդկական Վեդա կոչուած սուրբ գրքերում, և՛ բուդդայականութեան, և՛ հին-հրէական գրքերում, և՛ Աւետարանում, և՛ յաջորդող բարոյական վարդապետութիւնների մէջ։ Այդպէս են Մովսէսի պատուիրանները. մի՛ սպանաներ, մի՛ շնար։ Այդպէս են Մանուի պատուիրանները (1. հնդկական օրէնքների և սովորոյթների ամենահին ժողովածուի ենթադրեալ հեղինակը. 2. հնդկական դիցաբանութեան մէջ նա համարվում է մարդկային ցեղի նախահայրը). սուտ մի՛ խօսիր, անձնատուր մի՛ լինիր արբեցողութեան։ Այդպէս են բուդդայականութեան պատուիրանները՝ կենդանիների նկատմամբ ցոյց տրուելիք կարեկցութեան մասին։ Այդպէս են Քրիստոսի հինգ մեծ պատուիրանները, որոնք ամբողջ մարդկային կեանքն են ընդգրկում. 1) մի՛ զայրանար. 2) անձնատուր մի՛ լինի մարմնական ցանկութիւններիդ. 3) մի՛ երդուիր. 4) բռնութիւն մի՛ գործիր. 5) սիրի՛ր թշնամիներիդ։

Պատուիրանների յաւելուածները, որոնք բղխում են Աստուծու կամքին հնազանդուելու և մերձաւորին սիրելու հիմնական օրէնքից, նայած հանգամանքներին, կարող են շարունակ մեծ ծաւալ ընդունել։ Ով ըմբռնել է իր դրութիւնը և իւրացրել այդ դրութիւնից բղխած հիմնական օրէնքը, նա տիրապետում է կրօնա-բարոյական ճշմարտութեան բանալուն և այդ սկզբունքից ինքը պէտք է եզրակացնի իր կեանքի համար անհրաժեշտ կանօններն ու պատուիրանները։

Բանը նրանումն է, որ ինքդ չխաբես քեզ, այլ ըմբռնես քո դրութիւնն աշխարհում։ Եթէ յիրաւի իմանաս, հասկանաս այդ դրութիւնը, հասկանաս, որ չի կարելի ապրել անձնական երջանկութեան համար, որ կեանքը կեանք է միայն այն ժա-

ժամանակ, երբ ընդունես այդ որպէս Աստուծուց քեզ տրուած պարգև՝ Նրան ծառայելու համար, որ դու Աստուծու ծառան, ստրուկն ու գործիքն ես և, միևնոյն ժամանակ, Նրա որդին,—այն դէպքում կեանքը չի լինի տանջանք, այլ երջանկութիւն՝ թէ քեզ և թէ ամբողջ աշխարհի համար։ Հարցն ամբողջապէս քո դրութեան այդ խոստովանութեան մէջ է կայանում։ Հէնց դրանից էլ առաջանում է Աստուծու կամքին հնազանդուելը, հաւասարութեան, եղբայրութեան խոստովանութիւնը, մերձաւորներին սիրելն ու նրանց ծառայելը, փոխադարձ օգնութիւնն ու հըրճուանքը։

Եթէ մարդիկ հասկանային միայն, որ իրանց կեանքի իմաստը Աստուծուն ծառայելն է, այն դէպքում մարդկանց ներկայ կեանքի տանջանքներն ու սարսափը կը փոխարինուէին բերկրանքի և Աստուծու մերձեցող արքայութեանը։ Եւ այդ բոլորը կառաջանար նրա համար, որ մարդիկ այլևս չէին մոլորուի և կըմբռնէին իրանց ներկայ դրութիւնը։

Եղբայրնե՛ր և քոյրե՛ր, ի սէր ձեր կեանքի (չէ՞ որ դրանից աւելի կարևոր բան չկայ) մտածեցէք այդ մասին։ Դադարեցէք ապրելուց։ Մտածեցէ՛ք, թէ ի՛նչ էք դուք, ո՛վ էք դուք և ի՛նչ է սպասում ձեզ։ Չէ՞ որ այն կեանքը, որ մենք ենք ճանաչում, մէկ է։ Ապա ուրեմն ինչո՞ւ և ի՛նչ բանի համար խորտակել այդ կեանքը։ Հասկացէ՛ք, որ այն ամենը, ինչ կարևոր է թւում մեզ,—բաւականութիւնները, ուրախութիւններն ու հարստութիւնները, հայրենիք, քաղաքավարութիւնները, սովորութիւններն ու փառքը,—ոչինչ են՝ կեանքի գլխաւոր, ճշմարիտ կոչման և Աստուծու կամքը կատարելու համեմատութեամբ։ Փոխեցէ՛ք ձեր կենցաղը՝ ոչ թէ Նրա համար, որ այդ հրամայում է մէկն ու մէկը, այլ որովհետև դրա մէջ է ձեր և ամբողջ աշխարհի երջանկութիւնը։

Եւ չհաւատաք նրանց, որոնք ձեզ կասեն, թէ այդ անհնարին է, թէ մարդիկ անուղղայ են՝ իբրև ընկածներ, ո՛չ էլ այն վատթար խաբեբաներին, որոնք կասեն, թէ այդ անկարելի է, թէ մարդիկ փոփոխվում են և բարւոքում իրանց կեանքը՝ համաձայն պատմական, սոցիալական օրէնքների, որ ճանաչում կամ ուսումնասիրում են նրանք։ Չհաւատաք ո՛չ մէկին, ո՛չ միւսին, այլ ապրէ՛ք ձեր կեանքի ողջ զօրութեամբ և ձեր բանականութեամբ, իսկ մնացածն Աստուծուն վերապահէ՛ք։

Ես ապրում էի վատ ու անմիտ, ինչպէս ամենքը․ բայց յետոյ, համարեա 30 տարի առաջ, ինձ համար բացուեց ճշմարտութիւնը, և այդ ժամանակուանից իմ կեանքը դարձաւ խա-

ղաղ, բախտաւոր, ուրախ. և քանի գնում ու մօտենում էր մահուան, այնքան աւելի լաւ էր դառնում։

Եւ հաւատացած եղէք, որ միևնոյնը կը լինի և ձեր վերաբերմամբ։ Չի կարող չլինել, որովհետև ապրելը դժուար է միայն այն դէպքում, երբ ապրում ենք հակառակ՝ կեանքի և Աստուծու օրէնքներին։ Իսկ համաձայն այդ օրէնքների վարած կեանքը՝ անդադրում բերկրանք է ցմահ, մինչ այն մահը, որ Աստուած է կամենում։ Չէ՞ որ մահը զարհուրելի է միայն Նրա համար, ով Աստուած չի ճանաչում, կամ ճանաչում է չար Աստուած, որ միևնոյն բանն է։ Սակայն նա, ով ճանաչում է Աստուած, Նրա ողորմածութիւնը և ապրում է Նրա օրէնքի համաձայն սահմանուած կեանքով, այդպիսի մարդու համար մահը միայն անցումն է Նրա կողմից տնօրինուած մի որոշ դրութիւնից (որ երջանկութիւն է թւում) ուրիշ, անյայտ դրութեան, որ նոյնպէս հէնց Նա ինքն է որոշել, և այդ պատճառով էլ պէտք է երջանկութիւն համարուի։

Թարգմ. Գ. ՄԵԼՈՅԵԱՆ

# ՕՍՄԱՆԵԱՆ ՀԱՅԵՐԻ
# ԱԶԳԱՅԻՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ *)
# (1860—1910)

---

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

*Օսմանեան Խորհրդարանի երկրորդ շրջանը.—Հայ երեսփոխաններն և նրանց քննադատական ճառերը.—Խիստ քննադատութիւն և յարձակում կառավարութեան դէմ.—Խորհրդարանի փակումն և փակման պատճառները.—Աբդուլ Համիդի վերաբերմունքը. Նրա ծայրայեղ կասկածոտութիւնը։*

*Պատերազմի տաք միջոցին, բացուեց Օսմանեան Խորհրդարանի երկրորդ շրջանը։ Ըստ սահմանադրութեան՝ նոյեմբերի սկիզբը գումարուած պիտի լինէր նա արդէն, բայց իրօք միայն դեկտեմբերի սկիզբը կարողացաւ ժողովուել։ Ընտրութիւնները դարձեալ նախկին ձևով, այն է՝ ժամանակաւոր կանոնների համաձայն կատարուեցին, որովհետև Խորհրդարանի Ա. շրջանի քուէարկած ընտրողական օրէնքը կառավարութեան կողմից չէր ընդունուել։*

*Նոր երեսփոխանների թիւն այս անգամ 107 էր, որոնց 60-ը մահմեդական և 47 ոչ-մահմեդական։ Հայերն այս անգամ ևս մեծ յաջողութիւն ունեցան և համեմատաբար մեծ թուով ներկայացուցիչ ուղարկեցին նոր շրջանի համար։ Այս երեսփոխաններն էին՝*

Կ. Պոլսից—*1) Յովհ. Ալլահվերդի, 2) Ալէքսան Սագայեան և 3) Յակոբ Գազազեան (որ յետոյ դարձաւ Աբդուլ Համիդի հաւատարիմ բարձր պաշտօնեայ և ծառայեց նրան մեծ անձ-*

---

***) «Արօր» 1910 թ. № № 1, 2, 3, 4, 5, 6—7, 8—9—10, 12 և 1911 թ. № № 1, 2—3, 4, 5—6 և 7—8.**

նուիրութեամբ իբրև Անձնական Գանձի մինիստր և կարճ ժամանակով նաև Ելևմտից մինիստր)։

Սեբաստիայից—4) Գէորգ Փափազեան,

Տրապիզոնից—5) Յովհ. Կիւրեղեան,

Կարինից—6) Խաչատուր Ներսիսեան,

Երզնկայից—7) Կիրակոս Գազանճեան,

Աֆրիանուպոլսից—8) Ռուբէն,

Հալէպից—9) Մանուկ Խարաճեան,

Դանուբեան նահանգից—10) Յակոբ Գազանճեան,

Բրուսայից—11) Եավրուեան,

Ադանայից—12) Պզտիկեան և

Զմիւռնիայից—13) Յակոբ Սպարթալեան։

Խորհրդարանի այս երկրորդ շրջանը սուլթան Համիդ անձամբ բացաւ և գահական ճառում չվարանեց յայտնելու, թէ «օրէնսդրական և քաղաքական գործերում ճշմարտութեան վերահասու լինելու, ինչպէս և պետական ու հանրային շահերը պաշտպանելու համար անհրաժեշտ է խօսքի ազատութիւնը...»։ Իր ճառը վերջացրեց աւելի մեծ կեղծիքով, այն է թէ «Տէրութեան միակ փրկութիւնը Սահմանադրութեան գործադրութեան մէջն է կայանում...»*)։

Ցեղերի հաւասարութեան հիմնական սկզբունքով իբր թէ առգործուած նոր մահմեդական երեսփոխանները դժգոհութեան ձայն բարձրացրին, երբ յայտնուեց, որ ամենածեր երեսփոխանըն, որ ժամանակաւորապէս նախագահական աթոռը պիտի գրաւէր, պատահմամբ քրիստոնեայ էր, մի յոյն, Միխալաքի ազգանունով։

Վերջնական ընտրութեան ժամանակ այնուամենայնիւ մի քրիստոնեայ փոխ-նախագահ ևս անցաւ, որ էր Յովհաննէս Ալլահվէրդի։

1878 յունուարի 12-ի և 19-ի նիստերում Թիւրք պետական պաշտօնեաների գեղծումները դարձաւ խիստ քննադատութեան առարկայ դարձան, որին մասնակցեցին երկու հայ երեսփոխան, Խարաճեան և Գազազեան։ Բայց ընդդիմադիրների բուն պարագլուխը մի ազատասէր մարդ էր, Ահմէդ էֆ. Եէնիշէհիրլիզադէ, որ ուղղակի նրանց՝ այդ պաշտօնեաներին գող և կաշառակեր էր անուանում։ «Իմ գաւառում (Այդընի վիլայէթ),—ասում էր նա,—կառավարութեան պաշտօնեաները հարստահարում

*) Սայիդ փաշա (նախկին սադրազամ) իր Յիշողութիւնների մէջ ասում է, թէ ինքն է խմբագրել սուլթանի խօսած այս ճառը։ («Սայիդ փաշայի խաթըրաթը», Ա. հատ. էջ 14)։

են ժողովուրդը, դատարանների պաշտօնեաները գողանում իրանց իբրև աւանդ յանձնուած գումարները, իսկ ոստիկաններն ուղղակի կեղեքում են ժողովուրդը...»։ Եւ հայ ու թիւրք երեսփոխաններ փոխն ի փոխ երևան էին հանում իրանց գաւառներում պաշտօնեաների կատարած զեղծումներն և պահանջում էին նրանց պաշտօնանկութիւնը։ Բայց այս պահանջումներն և բողոքներն անլսելի էին մնում կառավարութեան կողմից, որ արդարացնում էր իրան, ասելով թէ պատերազմի ժամանակ որևէ բարենորոգում անկարող է կատարել։ Այնուամենայնիւ Խորհրդարանը գոհական ճառի պատասխանում իր դժգոհութիւնը յայտնեց գործադիր իշխանութեան (ալէթը իջրաիյէ) անկարողութեան մասին։

Յունուարի 28-ի նիստում հայ երեսփոխանները յարմար առթից օգտուելով անվախ կերպով յուզեցին գաւառական հարստահարութիւնների խնդիրը։ Խարաճեան երկարօրէն բացատրելով միւլթէզիմների (հարկահաւաքների) գործած զեղծումները՝ առաջարկում էր, որ առհասարակ աշարի (տասանորդ) դրութիւնը վերցուի ու տուրքի նոր ձև հաստատուի, ինչպէս այդ ընդունուած էր աւելի քաղաքակրթուած երկիրներում։ Եւ Խորհրդարանի մեծամասնութիւնն սկզբունքով ընդունում է այս առաջարկութիւնը։

Մի հայ երեսփոխան էլ գաւառական պաշտօնեաների զեղծումների մասին մանրամասն խօսելով երկրի վաճառականութեան, արհեստների և այլ օգտակար գործերի յետամնացութեան իբրև գլխաւոր պատճառ ցոյց տուեց այդ զեղծարար պաշտօնեաներին և մի առ մի յառաջ բերեց, թէ նրանք Հայաստանում ինչ գողութիւններ և չարիքներ են կատարել։ Ամբողջ Խորհրդարանը ծափահարութեամբ ընդունեց նրա այս յայտնութիւնները։ Մի ուրիշ հայ երեսփոխան էլ, Գ. Փափազեան, փաստացի վկայութիւններով երևան հանեց թիւրք դատարաններում կատարուած զեղծումները։ Հայ երեսփոխանները ջերմ պաշտպան հանդիսացան նաև մամուլի ազատութեան։ Բայց թէ հայ և թէ միւս քրիստոնեայ երեսփոխաններն աւելի խիստ բողոքի ձայներ բարձրացրին՝ Եւրոպական Թիւրքիայից դարձած բաշիբօզուքների (անկանոն զօրք) վայրենութիւնների դէմ, որոնք Կ. Պօլսի փողոցներում այն ժամանակ, ազատ համարձակ ծախում էին ոչ միայն քրիստոնեայ եկեղեցիներից գողացած նուիրական անօթներ և այլ իրեր, ժողովրդից յափշտակած արջառն և ոչխարներն, այլ նոյն իսկ իրանց առևանգած և միասին Կ. Պօլիս բերած բազմաթիւ մանչ և աղջիկ քրիստոնեայ երեխաներ։

Հայ և յոյն պատրիարքարանները գնել էին այդ Թշուառների մի մասը, բայց չէրքէզների ձեռքում դեռ ևս 300-ից աւելի այդպիսի գերի էր մնում։ Խորհրդարանը յոյն և հայ երեսփոխանների բողոքին համաձայնեց, և կառավարութիւնը յանձին առաջին մինիստր Ահմէդ Վէֆիկ փաշայի խիստ հրաման հանեց այս ամօթալի գերեվաճառութիւնն արգելելու համար։ Այս գործն այնքան վրդովեցուցիչ էր, որ մինիստրը հարկ համարեց անձամբ էլ այցելել Ներսէս պատրիարքին և խնդրել, որ սա ևս իր կողմից յատուկ մարդ նշանակէ, որպէսզի կառավարութեան հետ միասին գործելով երևան հանեն, թէ որտեղ են պահվում և ծախվում այդ քրիստոնեայ գերի մանուկները։

Այս չէրքէզներն էին, որոնց, յետոյ, Թիւրք կառավարութիւնը հայաբնակ գաւառներն ուղարկեց, իբր թէ հաստատուն բնակութեան համար, և նրանք այնտեղ լրացրին եւրոպական նահանգներում կատարած վայրագութիւնները բազմաթիւ հայ գիւղեր կողոպտելով և ոչնչացնելով իրանց շրջանում։

Այն ամեն գազանութիւններն և հարստահարութիւններն, որոնք կատարվում էին երկրի զանազան կողմերում և որոնց այնքան աշխատում էր ծածկել կառավարութիւնը, խորհրդարանում արձակ համարձակ երևան էին հանվում։ Խօսքի ազատութիւնից ընդարձակօրէն օգտվում էին մանաւանդ հայ երեսփոխաններն, որոնք, քաջալերուած իրանց մի քանի ազատամիտ Թիւրք և յոյն ընկերակիցների օրինակներից, համարձակ կերպով մատնանիշ էին անում գաւառական ժողովրդի կրած հարստահարութիւններն և նրանց հեղինակներին։ Երզնկայի երեսփոխան Կիրակոս Գազանճեան մի երկար ճառով յառաջ է բերում երկրի վարչութեան վատթարութեան պատճառներն, որոնք հաւատարիմ պատկեր են ներկայացնում ընդհանուր երկրի մէջ տիրող սիստեմի։

«Ա. Հաւատարիմ, պատուաւոր, պարտականութիւնը ճանաչող և ժողովրդեան համակրութիւնը գրաւող պաշտօնեաներն առանց պատճառի, առանց յանցանքի, ի հարկէ ստիպեալ ըսելով հրաժարեցնելն։

«Բ. Անպատիւ, տգէտ, կաշառակուլ և պարտականութիւնը չգիտցող պաշտօնէի մը վրայ երբ դանգատ կըլլայ, իսքիլամի կանոնով զայն արդարացնել և վերահաստատելն։ Եւ երբ ձայները տարապայման բարձրանան և զայն հոն թողուլ անհընար ըլլայ, կամ ուրիշ տեղի մը հետ փոխել (բէջայիշ) և կամ անկից հանելով անմիջապէս ուրիշ լաւագոյն պաշտօնի մը դնելն։

«Գ. Տէրութեան և ազգին վնասակար պաշտօնէից անպատիժ մնալն։

«Դ. Կաշառառուի և կաշառատուի համար հաստատեալ կանոնի ծուռ ըլլալը, որով պաշտօնատարք կաշառակերութենէ չեն վախնար։

«Ե. Կողմնակալութիւն, պաշտպանութիւն (իլթիմաս) և մարդ շահեցնելու սովորութիւնը...»*)։

Այս պատճառներին իբրև բացատրութիւն ճառախօսը բազմաթիւ փաստեր է յառաջ բերում, մանաւանդ վերջին ժամանակները կատարուած բռնութեան և անկարգութեան դէպքերից, և ապա աւելացնում է. «Ասոնք և ասոնց նման հազարաւոր զեղծմունք տեսնող ժողովրդեան քով համբերութիւն կը մնայ»։

Ուշադրութեան արժանի է, որ այս վաղամեռ խորհրդարանի հայ երեսփոխանները գանգատուելով հանդերձ Թրքական վարչութեան դէմ՝ միևնոյն ժամանակ իրանք իրանց ջերմ օսմանցի էին ցոյց տալիս։ Երբ պատերազմը մօտենում էր իր վախճանին և լուրեր էին տարածուել, թէ Թիւրքիան պիտի ստիպուէր իր երկրի մի մասը զիջել յաղթական Ռուսաստանին, Հալէպի երեսփոխանը, «յանուն 500,000 հայոց, որոնք կը գտնուին Հայաստանի մէջ և որոնց նախնիքը 500 տարիէ ի վեր այնքան հաւատարմութեամբ ծառայեր են օսմանեան պետութեան, յանուն և Երեսփոխանական Ժողովոյն մէջ գտնուած իր ընկերներուն խնդրեց, որ «եթէ Ռուսիոյ տէրութեան պատերազմական ծախք հարկ ըլլայ վճարել, կը խնդրենք վեհափառ սուլթանէն, որ Հայաստանէն երկիր չտրուի, տեղը դրամ վճարուի. և եթէ այս անհնար ըլլայ, մեր բողոքն յանուն ազգին՝ բարեկամ տէրութեանց ուշադրութեանը ներկայացուի։ Իսկ եթէ ռուսաց անպատճառ հող պիտի տրուի, կը խնդրենք, որ, չտրուի Հայաստանէն, տէրութիան ամեն ժամանակ տագնապ բերող կողմերէն տրուի»**)։ Հայ երեսփոխանների, այս բողոքը մասամբ անշուշտ հիմնուած էր նաև այն երկիւղի վրայ, թէ եթէ Թրք. Հայաստանը Ռուսաստանի իշխանութեան տակ մըտնէ, այնտեղ հայութիւնն իբրև առանձին ազգ իր գոյութիւնը վտանգի պիտի ենթարկէ, կորցնելով իր մայրենի լեզուն և նախնեաց հաւատը...։ Իսկ Թիւրք երեսփոխաններն այդ խօսքերն ամբողջապէս նրանց օսմանեան հայրենասիրութեան վե-

---

*) «Մասիս», 1878 № 2082

**) Հ. Մ. Նուրիխան, «Ժամ. Պատմ.», Գ. հ. էջ 552.

բացրելով՝ չափազանց գոհ մնացին։ Խորհրդարանն որոշեց, որ այս խնդիրը ներկայացուի կառավարութեան նկատառութեան։

Որչափ էլ կառավարութեան թուլութեան, անկարողութեան և պաշտօնեաների զեղծումների դէմ խօսուածներն անհաճոյ էին սուլթանին և կառավարութեան, այնու ամենայնիւ մինչև մի աստիճան տանելի էին, և այդ պատճառով Խորհրդարանի գոյութիւնը չէր վտանգուի եթէ չլինէր ուրիշ, աւելի ծանրակշիռ պահանջում Խորհրդարանի կողմից։ Կառավարութիւնն ամենից աւելի անհանգստացնողը Խորհրդարանի պատերազմական գործերի մէջ խառնուելն և յատկապէս բանակի կրած անյաջողութիւնների պատճառները քննելն էր, որ մինիստրութեան համար չափազանց անցանկանալի էր համարվում, թէև Խորհրդարանն այդ խիստ հարցապնդումներն և նոյն իսկ յարձակումներն անելով պարզապէս ժողովրդի մէջ տիրող ըղգացմունքին արձագանգ էր հանդիսանում։ Պատերազմի առաջին շրջանումն իսկ, երբ օսմանեան զէնքը համեմատաբար յաջող վիճակի մէջ էր, մի թիւրք երեսփոխան հարցումներ էր ուղղել բանակի հրամանատարների անընդունակութեան մասին և առանձնապէս յարձակուել էր պատերազմական մինիստրի և թնդանօթարանի մուշիր Մահմուդ փաշայի դէմ։ Երբ Արդահանի գրաւման լուրն հասաւ, դժգոհութեան ձայներն այդ փաշաների դէմ ևս աւելի մեծացաւ և վերջապէս նրանց անկումն յառաջ բերաւ։ Խորհրդարանի երկրորդ շրջանում պատերազմական գործողութիւնների վարման եղանակի դէմ շատ աւելի խիստ ձայներ լսուեցին, որոնք պահանջում էին, որ կառավարութիւնը բացատրութիւն տայ այդ մասին Խորհրդարանին։ Երբ որոշուեց, որ պարտուող զինուորական հրամանատարներից ոմանք պատերազմական ատեանի առջև դատուին, Խորհրդարանը պահանջեց, որ դատավարութիւնը հրապարակային լինի և ոչ գաղտնի. իսկ հայ երեսփոխաններից մին յարմար էր համարում, որ Օսման փաշան լինի պատերազմական ատեանի նախագահն՝ իբրև ամենից արժանաւոր զինուորականը։ Այս պահանջումները խիստ կերպով նեղացնում էին կառավարութիւնը։ Եւ ահա 1878 փետրուար 2/14-ին առաջին մինիստր Ահմէդ Վէֆիկ փաշան սուլթանական մի հրաման է կարդում, որով Խորհրդարանը լուծվում էր անորոշ ժամանակով։ Իբրև պատճառ յառաջ էր բերուած երկրի քաղաքական լուրջ կացութիւնը։ Աբդիւլ Համիդի այս անակնկալ քայլը շատ մեծ տպաւորութիւն թողեց բովանդակ Խորհրդարանի վրայ։ Ոչ ոք չէր հաւատում, թէ պատճառն իրօք այն էր, ինչ որ յիշուած էր հրամանագրի մէջ, և ամենքն սկր-

սեցին զանազան շարժառիթներ փնտռել այս խիստ միջոցը բացատրելու համար, որովհետև արդէն գուշակում էին, թէ փակումը ժամանակաւոր լինելու երևոյթը չունէր։ Ոմանք հաւատացնում էին, թէ սուլթանին այս խորհուրդը տուողը ռուսական կառավարութիւնն էր, որի համար շատ հաճելի չէր, ասում էին, իր դռների մօտ, Թիւրքիայում, սահմանադրական ռէժիմի հաստատումը, թէև այդ անկատար իսկ լինէր։ Իսկ ուրիշները պնդում էին, թէ իսկական շարժառիթը Խորհրդարանի բռնած թըշնամական վերաբերմունքն էր կառավարութեան դէմ։ Բայց ահա թէ ինչ էր գրում այս մասին մի լուրջ եւրոպական թերթ՝ երաշխաւորելով իր տուած տեղեկութեան ճշդութիւնը.

«Ռուսական կառավարութիւնն անմասն է այս գործում։ Ճշմարիտն այս է, որ Աբդիւլ Համիդ շատ մեծ տհաճութեամբ էր տեսնում, թէ երեսփոխաններն ազատօրէն վիճում էին կառավարութեան բոլոր գործողութիւնների մասին, քննադատում էին իր սիրելիներին և այնչափ յառաջ էին գնում, որ նոյն իսկ իր մինիստրների և զօրապետների դատի ենթարկուելն էին պահանջում։ Վերջին ժամանակ նրա դժգոհութիւնն իր գագաթնակէտին էր հասել երեք զայրացուցիչ իրողութիւնների պատճառով։ Նախ՝ երբ սուլթան Համիդ սադրազամութիւնը վերածեց առաջին մինիստրի (premier ministre) պաշտօնին, Խորհրդարանը նկատողութիւն արաւ, թէ այս փոփոխութիւնը հակասահմանադրական գործողութիւն էր։ Երկրորդ՝ կառավարութիւնն երբ մամուլի, վիլայէթների և պաշարման վիճակի մասին օրինագծերը պահպանողական ոգով փոփոխելուց յետոյ երկրորդ անգամ Խորհրդարանին ներկայացրեց, Խորհրդարանը դարձեալ մերժեց՝ չնայելով կառավարութեան ստիպումներին։ Եւ վերջապէս Խորհրդարանն ամենախիստ կերպ յարձակուեց սուլթանի սիրելի պատերազմական մինիստր Րէուֆ փաշայի վրայ»։

«Անցեալ օր Աբդիւլ Համիդ մի մեծ ժողով էր հրաւիրել պալատ՝ երկրի վիճակի և առանձնապէս անգլիական նաւատորմղի ներս մտնելու և ռուսական բանակի դէպի Կ. Պոլիս արշաւելու վերաբերեալ ամենալուրջ հարցերը քննելու համար։ Մինիստրներից զատ հրաւիրել էին նաև բոլոր նախկին մինիստրներին և Խորհրդարանից հինգ անդամի, նախագահին, 2 փոխնախագահներին, և երկու երեսփոխանի՝ Ահմէդ էֆէնդիին և Քէմալ էֆէնդիին։ Սրանց առաջինը հասարակ վաճառական էր, իսկ երկրորդը հրէայ շաքարագործ։ Այնպէս յոյս ունէին, թէ այս պարզ մարդիկն ոչ մի ընդդիմախօսութիւն պիտի չանէին կառավարութեան առաջարկութիւններին, բայց հաշիւը սխալ դուրս

*եկաւ...։ Երբ առաջին մինիստրն երկրի դրութիւնը պարզելով ժողովականների կարծիքը հարցրեց, երեսփոխան Ահմէդ էֆէնդին ոտք ելաւ և սուլթանին մօտաւորապէս հետևեալ խօսքերն ուղղեց. «Շատ ուշ էք մեր կարծիքը հարցնում։ Երբ դեռ կարելի էր աղէտի առաջն առնել, այն ժամանակ պէտք էիք մեզ հետ լրջօրէն խորհրդակցել։ Խորհրդարանը չէ կարող պատասխանատուութիւն ստանձնել այն բանի համար, որ առանց նրան է կատարուած։ Արդէն Խորհրդարանի՝ զանազան խնդիրների նկատմամբ յայտնած կարծիքներին ոչ մի կարևորութիւն չէր տրուած։ Նրա տուած որոշումներից ոչ մէկը չէ գործադրուած։ Կրկնում եմ, Խորհրդարանը մերժում է որևէ պատասխանատուութիւն ներկայ աղէտների պատճառների մասին»։*

*Երբ Ահմէդ էֆէնդին խօսում էր, սուլթան Համիդ յայտնապէս սարսափելի զայրոյթ էր զգում։ Նա այլ ևս անկարող եղաւ ինքն իրան զսպել և գոչեց. «Ես սխալուել եմ իմ հօրս, Աբդիւլ Մէջիդին նմանել ուզելով, որ ցանկանում էր բարեկարգել համոզելով և ազատական հաստատութիւններ մտցնելով։ Ուստի ես պիտի հետևեմ իմ պապի՝ սուլթան Մահմուդի օրինակին։ Ես էլ նրա նման տեսնում եմ, որ Աստուծոյ ինձ յանձնած ժողովուրդները միայն բիրտ ոյժի միջոցով կարելի է քալեցնել»։*

*Ժողովը վերջացաւ թէ չէ՝ սուլթանը մինիստրներից պահանջեց, որ Խորհրդարանն ընդհատուի»*)։*

*Եւ Աբդիւլ Համիդ իր խօսքը կատարեց. այնուհետև նա ոչ միայն բիրտ ոյժ գործ դրեց իր ժողովուրդները կառավարելու համար, այլ նաև խստութիւն և ոճիրներ՝ իր բռնապետութեան շահի համար։*

*Խորհրդարանը փակելու հետևեալ օրը 10 երեսփոխան, որոնց մէջ մէկը հայ էր, Խարաճեան Մանուկ, հրաման ստացան անմիջապէս իրանց քաղաքները վերադառնալ։ Եւ երբ սրանք բողոքեցին, թէ այս հրամանը ընդդէմ էր Սահմանադրութեան, 48 ժամ վերջը նրանց բոլորին էլ բռնի կերպով Կ. Պոլսից դուրս վանեցին**)։*

*Եւ այսպէս վերջ գտաւ Օսմանեան Խորհրդարանն, որի դռներն ամբողջ 30 տարի փակ մնացին Աբդիւլ Համիդի բռնաւորական ճիրանների ճնշման տակ։*

*Աբդիւլ Համիդի համար Խորհրդարանի անդամներն աւելի*

*) «Le Temps», *23 փետրուարի 1878.*

**) «Le Temps», *2 մարտի 1878.*

կամ պակաս արգելք էին իր սանձարձակ միահեծան իշխանաւորութեան։

Սահմանադրութեան հրատարակման առաջին օրից իսկ նա աշխատեց ջլատել Խորհրդարանի գործունէութիւնն, որովհետև միայն ակամայ էր համաձայնել նրա հաստատման։ Առաջին շրջանի բացման ժամանակ նա յայտնապէս նեղուած էր, ջղայնութիւն էր ցոյց տալիս և յաճախ ձեռքն իր ճակատին և մօրուքին էր տանում*)։ Երբ գահական ճառի ընթերցումը վերջացաւ, «ամէն մարդ սպասում էր, թէ բարի գալուստ պիտի մաղթէր երեսփոխաններին»**), բայց «մի արագ ձեռքի շարժումով ողջունեց միայն, և մտաւ իր սենեակը»***)։ Նրա այս վարմունքը հիասթափութիւն յառաջ բերաւ և դեռ այն ժամանակ վատ նշան համարուեց։

Օսմանեան Խորհրդարանը «նման էր այն մարտիրոս մանուկներին, որոնց երևան գալը զայրոյթ է պատճառում ծնողներին։ Այս ծնողները չկարենալով անմիջապէս անհետացնել այդ մանուկներին՝ արգելքի տակ են դնում նրանց, փակում են նկուղի մէջ, տանջում են, զրկում են հացից, լոյսից և կրակից մինչև այն օրն, երբ վերջին հարուածն են տալիս և սպանում, այն պատրուակով թէ այդ տղայք անուղղելի էին և լաւագոյն էր նրանց ոչնչացնել։ Ահա այսպէս է վարուած Աբդուլ Համիդ իր Խորհրդարանի նկատմամբ»****)։

Աբդուլ Համիդի այս բռնապետական վարմունքը մասամբ բացատրվում է այն ծայրայեղ կասկածոտութեամբ, որին նա ենթակայ է եղել իր թագաւորութեան առաջին տարուց սկսած, երբ նա շարունակ անզուսպ երկիւղի և հալածանքի վախի տակ էր գտնվում։ Այս պատճառով էլ նա ոչ մի միջոց չէր խնայում իր անձը ապահովելու համար. ամէն տեղ և ամէն վայրկեան դաւադրութիւն էր երևակայում իր անձի դէմ։ Ահա ինչ է պատմում մի արժանաւոր թղթակից նրա մասին 1877-ին. «Երբ որոշուած է, թէ ծովի վրայ պտոյտ պիտի անէ, յանկարծ փոխում է միտքը. հրամայում է, թէ պատրաստութիւն տեսնեն իր որևէ ցամաքային քէօշքն այցելելու և վերջին վայրկեանին փոխում է իր որոշումն և նաւակ է նստում ծովով շրջագայելու։ Իր պալատի բոլոր սրահներում, բոլոր գաւիթներում պա-

*) «Le Temps», 26 մարտի 1877.

**) Նոյն։

***) De Mouy, «Lettres du Bosphore».

****) Paul Fesch, «Constantinople aux derniers jours d'Abdul Hamid», Paris, էջ 285—6.

հակներ են դրուած։ Խալիֆի բնակած մասի բոլոր դռների վըրայ ծանր կողպէքներ են դրուած. անհիմն երկիւղը պաշարել է ամբողջապէս Նրա միտքը»*)։ Երբ Եւրոպա պատուիրուած Թընդանօթները պատերազմի միջոցին Կ. Պոլիս հասան, փոխանակ պատերազմի դաշտն ուղարկելու, ինչպէս սահմանուած էր, Աբդիւլ Համիդ իր պալատի, Ելդըզի բարձունքի վրայ շարել տըւեց, բերանները քաղաքի վրայ ուղղուած։ Այդ Թուականից ի վեր ամբողջ 30 տարի այս երկիւղամոլ ոճրագործն իր պալատի խորքերում փակուած էր ինչպէս Կայէնն իր գերեզմանում**), և իր եղբայր Մուրադի և իր բիւրաւոր զոհերի ուրուականները հալածում էին Նրան...։

ՍԱՐՈՒԽԱՆ

(Կը շարունակուի)

---

*) «Le Temps», 19 փետր. 1877.

**) «L'oeil etait dans la tombe et regardait Caïn» ասել է Վիկտոր Հիւգօն։

# ԳԱԲՐԻԷԼ ՔԱՀԱՆԱՅ ՊԱՏԿԱՆԵԱՆԻ
# ԻՆՔՆԱԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆԸ *)

(1822—1880)

---

*ԺԴ.*

## *Տիրացու-Գաբրիէլի հիւանդութիւնն եւ 1824-ի ծռա-զատիկը*

*Յոհաննէս սրբազան առաջնորդն թէպէտ ուսումնական ոք չէր, բայց բարեմիտ անձն էր, տէր-Սարգսի և երէցփոխ Սարգսի բռնութենէն ճնշուած լինելով բազում անգամ արահետ ճանապարհէն զարտուղում էր։ Այս զարտուղութիւննևս չէր լինիր, եթէ նոքա խորամանկութեամբ նորան յաջ կամ յահեակ չխոտորեցուցանէին։ Բայց անհնար էր. տէր-Սարգիս չէր կարող ուղիղ ճանապարհաւ ընթանալ։*

*Տիրացու-Գաբրիէլն զարգանում էր. թէպէտ նորա ցաւագարութիւնն, հիւծադիմութիւնն Բերիժանեանց սրտի մէջ միշտ արծարծում էր յուսոյ կայծն, որ տիրացու-Գաբրիէլն մի փոքրիկ ճրագի նման յանկարծ պիտի շիջանի, բայց որովհետև նորա բարի յիշատակն ևս կարող է մնալ ժողովրդեան սրտի մէջ, այն ժողովրդեան, որ տէր-Սարգսին պատւում են առ երեսս, իսկ տիրացու-Գաբրիէլին սիրում են ի սրտէ, բայց իւրեանց սէրն չեն կարողանում, կամ չեն կամենում յայտնել զանազան պատճառաւ, կամ տէր-Սարգսէն, կամ նորա եղբայրներէն, կամ նորա ազգականներէն, կամ երեսփոխան Սարգիս աղայէն կամ սրբազան առաջնորդէն ակ-*

---

*) «Արօր» №№ 4, 5—6 և 7—8.

նածելով, կամ կենցաղական հանգամանաց հպատակելով, որովհետև Սերոբէ Պատկանեանի կուսակիցք՝ բարեմիտ մարդիկ՝ աշխարհի ասպարէսէն արդէն մեկուսացած էին, իսկ տիրացու Գաբրիէլի կուսակիցք այն առաջաւորքն էին, որ պատշաճն և վայելչականն գերադաս պիտի համարէին քան զպիտանին և օգտակարն, և չէին կարող կենցաղակրթութեան պայմանքն խանգարել ճշմարտութեան նահատակ լինելով, այս պատճառաւ տէր-սարգսեանց յաղթանակն անժխտելի էր։ Այս և ինքն տիրացու-Գաբրիէլն քաջ գիտէր, վասն որոյ և հնազանդվում էր իւր ճակատագրին անտրտունջ, ո՛չ հայելով յայն՝ որ իւր անձին տկարութիւնն օր ըստ օրէ կը զօրանայր, և յայտնի կը տեսանէր, որ հայրն և մայրն ծածուկ կարտասուէին, և բարեկամքն գլուխներն շարժելով շրթունքն կը սեղմէին։ Տիրացու-Գաբրիէլն միայն այդու կը մխիթարուէր, որ եթէ մեռնի ինքն, նորա համար շատ անկեղծ արտասուք պիտի թափուէին։

Տիրացու-Գաբրիէլի տկարութեան մի սաստկացուցիչ պատճառ ևս յաւելաւ՝ երբ 1820 թիւն լուսացաւ։ Սերոբէ Պատկանեանն ի բազում ամաց հետէ օրացոյց ի լոյս կընծայէր. խօսակցութեան ժամանակն՝ ասաց բարեկամաց, թէ զկնի չորս տարւոյ, այսինքն 1824 թուին պիտի լինի ծռազատիկ, հայոց եկեղեցին պիտի տօնէ զատիկն մի շաբաթ յետոյ քան զեկեղեցին ռուսաց, և Երուսաղէմի մէջ պիտի նորոգուին այն շփոթներն և այն խռովութիւնքն, որ իննսուն և հինգ տարին մի անգամ պատահում են, և շատ լաւ կը լինէր, որ մեր հայրապետութիւնն այնպէս տնօրինէր, ինչպէս տնօրինեց Հեթում թագաւորն հայոց իւր թագաւորութեան ժամանակն։

Բարեկամքն խորհուրդ տուին՝ որ Սերոբէ Պատկանեանն մի նամակ գրէ սրբազան Եփրեմ կաթողիկոսին։

Սերոբէ Պատկանեանն գլխոյ ցաւ ունենալով՝ նամակի գրութիւնն յանձնեցին տիրացու-Գաբրիէլին։ Տիրացու-Գաբրիէլն ասաց. «Առանց հրամանի սրբազան առաջնորդի անվայելուչ է»։ Բարեկամք պատասխանեցին, թէ սրբազան առաջնորդն առանց երեսփոխան Սարգսի և տէր-Սարգսի չի ձեռնմխեր, եթէ նոքա հակառակին, պիտի խափանուի, և սըրտակտուր վհատեալ ցրուեցան։

## ԺԵ

## Ջանքեր 1824-ի ծռազատկի բարձման

Տիրացու-Գաբրիէլն կոնսիստորիայի մէջ խօսեցաւ անդամոց հետ, որք էին՝ Պետրոս վարդապետ, տէր-Խաչատուր, տէր-Սարգիս Բերիժանեանց և տէր-Պետրոս Պոպովեան։ (Սոցա մէջէն Պետրոս վարդապետն այն էր, որ մինչդեռ լոկ ուրարակիր էր, Քիթապ-Իւտան Թադէոս վարդապետն սորա անուամբ՝ «տիրացու-Պետրոս Աստապատցի Տէր-Յակոբեանի» նամակ գրեց հ. Միքայէլ Չամչեանին Յոսէփ Արղութեան արքեպիսկոպոսի իշխանազնութեան մասին, ոըպէս վերագոյն ասացաւ)։ Տէր-Սարգիսն ասաց. «Խորհուրդ հարցնենք աղա Սարգսէն». և պայման դրին ժողովիլ առաջնորդարան. անդ կոչեցաւ և Սերոբէ Պատկանեանն. այնպէս որոշեցին՝ որ տիրացու-Գաբրիէլն մի նամակ գրէ առ սրբազան կաթողիկոսն և մի նամակ առ Ներսէս արքեպիսկոպոսն ի դիմաց սրբազան Յոհաննէս առաջնորդի և հարցանէ՝ թէ նոքա ինչ կը բարեհաճին տնօրինել։

Տիրացու-Գաբրիէլն առաջնորդի թուղթն գրեց առ սրբազան հայրապետն Եփրեմ, և նորա մէջ ծանոյց՝ թէ «ըստ այսմ գրեցաւ և առ Ներսէս արքեպիսկոպոսն ի Տփխիս, զի և նա օգնեսցէ մեզ իւրով աստուածապարգև հանճարով». իսկ առ Ներսէս արքեպիսկոպոսն գրեաց, թէ «կամէաք նախ ի ձէնջ ստանալ զհաւանութիւն, և ապա գրել առ սրբազան հայրապետն, բայց զանգիտեցաք՝ թէ գուցէ չկամեցիք առնուլ ի վերայ ձեր զայն պատասխանատուութիւն՝ որ հայի ի քակտումն ցանկոյն տօնացուցի Սիմէոն կաթողիկոսի»։ Առ այս եկն պատասխան ի Ներսիսէ արքեպիսկոպոսէ, թէ այդ ոչ է խրամատութիւն ցանկոյ ազգային տօնացուցի, որովհետև Հեթում թագաւորի օրինակն յայտնի ուսուցանում է, թէ հարկ լուծանէ զօրէնս. իսկ վեհափառ Եփրեմ կաթողիկոսի պատասխանն այսպէս էր, թէ «ազգն և եկեղեցին իմ սեպհականութիւն չէ, որ ես միայնակ տնօրինեմ. գրեցի առ Ներսէս սրբազան արհին, և եթէ նա խորհուրդ տայ՝ կը գրեմ առ սրբազան պատրիարքունս Պօլսոյ և Երուսաղէմի, և առ կաթողիկոսունս հայոց Սսոյ, Աղթամարայ և Գանձասարայ, զի զհաճութիւն վիճակաւոր եպիսկոպոսաց իւրեանց առեալ՝ հաւանութեամբ ամենեցուն ուղղեսցի ծռազատիկն»։ Սրբազան արքեպիսկոպոսն Ներսէս բաւական էր համարել, որ վեհափառ հայրապետն գրէ առ սրբազան պատ-

րիարքն Պօլսոյ, և առ կաթողիկոսն Գանձասարայ, և առ առաջնորդն Բեսսարաբիոյ՝ Գրիգոր արքեպիսկոպոսն. իսկ առ կաթողիկոսունս Սսոյ և Աղթամարայ գրեաց պատրիարքն Պօլսոյ, որպէս և առ ամենայն եպիսկոպոսունս վիճակաց օսմանեան տէրութեան, իսկ առ առաջնորդն Հնդկաստանի և Պարսկաստանի և Ատրպատականի գրեաց ինքն հայրապետն ամենայն հայոց։

## ԺԶ

## 1824-ի ծռազատկի ոչնչացումը եւ Սերոբէ Պատկանեանի կազմած օրացոյցը

Յոյժ հաճոյական երևեցաւ այս տնօրէնութիւն սրբազանի Ներսիսի, որ ամենայն շփոթից առաջն առնլով՝ խաղաղութեան ճանապարհն հարթեց և յարդարեց. յամենայն կողմանց հասին պատասխանիք համաձայնութեան և հաւանութեան, և պատրիարքունք Պօլսոյ և Երուսաղէմի, և վարժապետք հայոց՝ որք էին ի Պօլիս՝ միաբան յանձնեցին Սերոբէ Պատկանեանին բառնալ ի միջոյ գայթակղեցուցիչ ծռազատիկն, որոյ միակ և դիւրին ճանապարհն էր այն, զի տարին նահանջ էր, և գիր տարւոյն Ո և Շ էր նշանակեալ Սիմէոնի տօնացուցի մէջ. գիր տարւոյն պիտի փոխուէր, և Ո և Շ գրոց փոխարէն՝ գործածուէր Ջ և Հ։ Սերոբէ Պատկանեանին կոնդակ եկաւ հայրապետական յէջմիածնէ, և պատրիարքական օրհնութեան նամակք յԵրուսաղէմէ և ի Պօլսոյ, որ ձեռամբ սրբազան Յոհաննէս առաջնորդի հասին առ նա, և 1824 թուի օրացոյցն պատրաստուեցաւ 1821 թուին և տպուեցաւ 1822 թուական, և յունվարի ամսէն սկսաւ ցրուիլ եռապատիկ քանակաւ աւելի քան զսովորականն։

Այլ որովհետև այս տարւոյ օրացուցի մէջ կային ինչ-ինչ գիտելիք ստորագրութեամբ տիրացու-Գաբրիէլի Պատկանեան, Ղզլարայ վարժապետն հայոց Գէորգ Մելքիսէթեան Խուբեանց, եղբօրորդին Սիմէոն կաթողիկոսի, անմոռաց ունելով ի սրտին 1805 թուի անցքն, որ Եփրեմ արքեպիսկոպոսն նորան չընդունեց ի պաշտօն գրագրութեան, թղթով յարձակեցաւ ի վերայ տիրացու-Գաբրիէլի՝ որպէս վրէժխնդիր տօնացուցի իւր հօրեղբօր՝ Սիմէոն կաթողիկոսի, կոչելով զնա հայրենի ցանկոյն քակտիչ, վասն որոյ և հրաւիրէր ի գլուխ նորա զամենայն օձս և

զկարիճս անապատի, և լերացն, և դաշտաց, և քարայրից, և վիհից, և դժոխոց իսկ։ Այս Գէորգ վարժապետի Խուբեանի թղթոյ պատասխանն, որ գրել տուեց այն ժամանակն սրբազան Յոհաննէս առաջնորդն, և նոցա պատճէնքն տիրացու-Գաբրիէլի ինձնաձեռագիր՝ ուղարկեց ա) առ վեհափառ սրբազան հայրապետն Եփրեմ, բ) առ պատրիարքն Երուսաղէմի, գ) առ պատրիարքն Պօլսոյ, դ) առ սրբազան արքեպիսկոպոսն Ներսէս, ե) առ սրբազան արքեպիսկոպոսն Գրիգոր՝ ի Բեսսարաբիա, զ) առ կաթողիկոսն Գանձասարայ, է) առ կաթողիկոսն Աղթամարայ, ը) առ կաթողիկոսն Սսոյ, առ որս՝ որպէս պանծացեալ էր Գէորգ վարժապետն Խուբեան, թէ գրեալ է, կամ զպատճէն գրոյն առաքեալ, և զը) պատճէնն պահեաց առ իւր սրբազան առաջնորդն Յոհաննէս։ (Ի 1872 ամի զմի ի պատճէնից աստի գտաւ ի Ստաւրապօլ, և տէր-Գաբրիէլ Պատկանեանն առաքեաց զայն ի Պօլիս առ տէր-Յոհաննէս խաչազարդեան մշտնջենաւոր աւագ քահանայն Մկրեան, և այժմ և անդ է)։

ԺԷ

Տիրացու-Գաբրիէլն առողջացած

Այլ այսքան անձնուրաց աշխատութիւնք ցայն աստիճան հասուցին զառողջութիւն նորա, զի յորժամ ի 1822 ամի եհաս յԱստրախան առաջին մաղձամահն (խոլերա մորպուս, կամ ըստ Դաւիթ բժշկին՝ կոլիրա-մորպուս) և եկն յԱստրախան տրքունական դարպասի բժշկապետն Ռոման Ֆիլիպիչ Վիթվիցկին. նա նշանակեաց երկարութիւն կենաց տիրացու-Գաբրիէլի՝ օր մի միայն. և ի միւսում աւուր՝ յորժամ եկն ի յուղարկաւորութիւն նորա, որքան զարմացաւ, մինչ ետես զնա ոչ միայն ողջ, այլ և առողջ։ Վեց տղրուկք, որոց խայթուածոց սպիք ցարդ ևս երևին ի կուրծս տիրացու-Գաբրիէլի, փրկեցին զնա ի ժանտաց մահու։

Տիրացու-Գաբրիէլի առողջանալն բազմաց եղև ուրախութեան պատճառ, ամենեցուն եղև հաւատալիմ, միայն տէր-Սարգսին և տէր-սարգսեանց եղև անհաւատալի, և սկսան ծածուկ և յայտնի կոչել զնա ջլեոք, բարակացաւ, կամ ռուսերէն՝ չախօթկին, և այս կրկին պատճառաւ, նախ՝ որ ոչ ոք չհամարձակի նորան աղջիկ տալ, որովհետև այսօր կամ վաղը պիտի ոտքի վերայ մեռնի, երկրորդ՝ որ Սերոբէ Պատկանեանն ունէր

մի դուստր՝ Կատարինէ անուն, որ ծնել էր Նոր-Նախիջեւան 1807 Թուին, և նորա կնքահայր եղել էր Եփրեմ սրբազան արքեպիսկոպոսն, արդէն ընտրեալն ի հայրապետութիւն. այս օրիորդ՝ որպէս քոյր տիրացու Գաբրիէլի՝ էր ցանկալի բազում փեսացուաց, յորոց վերայ տէր-Սարգիսն նայում էր որպէս արժանաւոր իւրոյ դստեր Մանուշակի փեսայութեան, բայց օրիորդն Կատարինէ Պատկանեանն նսեմացուցանում էր նորա փափիւնն իւր գեղեցկութեամբ։ Մի արձան կայ չէ երբէք այնպէս գոհարազարդ պճնեալ, որպէս Մանուշակ Տէր-Սարգսեան, բայց ինչ անես, որ աղքատ Սերոբէ Պատկանեանի դուստրըն, աղքատ տիրացու-Գաբրիէլի քոյրն, առանց մարգարտայեա քայուից և քառամանեկաց, երբ կը մտանէր խրախճանաց և հարսանեաց կամ խնջոյից դահլիճն, աչք փեսայացու պատանեկաց առ նա կը դառնային, նորա վերայ կը յառէին, յերես նորա կը պշնուէին։ Եւ տէր-Սարգսեանց պաշտելի դիցուհին օրիորդ Մանուշակ Տէր-Սարգսեան՝ իւր ծանրագին և մեծագին զարդուց մէջ կերեւէր գրաստ ոսկեբարձ։ Ուր մի անգամ նստէին տէր-Սարգիս և իւր կուսակիցք, անհնար էր՝ Թէ առարկութիւն չբանային տիրացու-Գաբրիէլի ակարութեան մասին, և խնայելով և խղճալով չխօսէին՝ Թէ ողորմելին փըրկութեան հնար չունի, զոհ պիտի երԹայ իւր աշխատասիրութեան, և աւելի ցաւալին այն է, որ այն փոխանցական ցաւն ճարակել է նորա չքնաղագեղ քրոջ ոսկերաց մէջ ևս, որ երբ հարսնանայ, խակոյն պիտի երեւան ելանէ։ Լաւ է՝ որ Իւժէն Սիւ ճանապարհորդութիւն չէր արած դէպ յԱստրախան, ապա Թէ ոչ անշուշտ պիտի հասարակաց ձայնն այսպէս հրատարակէր, Թէ այն բանաստեղծն Ռոդէնի պատկերն նկարելոյ ժամանակն գաղափար է ունեցել տէր-Սարգսի հոգեկան անձնաւորութիւնն, և տիրացու-Գաբրիէլի անձն է նորա Գաբրիէլ քահանայի նախագաղափարն։

—

## ԺԸ

## Կռուապատճառ ընդմէջ տիրացու-Գաբրիէլի եւ տէր-Սարգսի

Այս հանգամանաց մէջն էր տէր-Սարգսի և տիրացու-Գաբրիէլի դրութիւնն, մինչ բացուեցաւ մի լայնարձակ ասպարէզ, որոյ մէջ այս երկու դիւցազունք պիտի ոգորէին և մենամարտէին։ Մին էր խորարմատ բարձրաբերձ բազմոստեան սաղարթալիր հաստաբուն կաղնի, միւսն եղէգն շարժուն ի շնչոյ։ Մին փիղ՝ որոյ եղջերակնճիթն յարևելից յարևմուտս հասանէր և ահ և սարսուռ տարածէր ի հիւսիս և ի հարաւ, և միւսն՝ նապաստակ չքոտի։ Մին առիւծ՝ որոյ մռնչիւնն դող և սարսափ արկանէր յամենայն բնակիչս անտառաց և մայրեաց, լերանց և հովտաց, և միւսն՝ մուկն չնչին։ Մին արծիւ՝ որոյ թևոց շարժմունք մրրիկներ և փոթորիկներ էին յարուցանում, և որոյ աչք ի բարձանց երկնից էին իւրեանց որսն տեսանում և որոյ մագիլ և ճիրանք ամենայն թռչնոց և երէոց վերայ արհաւիրք էին սփռում, միւսն՝ ճնճղուկ, յորոյ վերայ արծիւն բնաւ արժանի չէր համարիր հայիլ անգամ։ Տէր-Սարգիսն էր Հերակլէս, որ սարսափելի մականն կամ մահակն ի ձեռին ինքեան արժանաւոր ախոյեան էր որոնում և ոչ գտանում, իսկ տիրացու-Գաբրիէլն մին էր ի թզկաց, որ Հերակլի քնած ժամանակն նորա շրջապատն ժողովուելով, նորան կարծել տուին՝ թէ ճանճեր են։ Նախախնամութիւնն տնօրինեց, որ սոքա մի անակնկալ առարկայի պատճառաւ ըմբշամարտ յարդարեն. Տրդատ և Հռիփսիմէ գոտեմարտին։ Ցաւալի գոտեմարտ՝ որոյ մէջ ոգորումն պիտի լինէր մահառիթ տիրացու-Գաբրիէլին՝ նորա այն տկարութեան ժամանակն, որովհետև կարող էր նորա մէջ յարուցանել այն ամենայն ցաւերն, որ վեց տզրուկք փոքր ինչ մերժել էին, և որոյ մէջ՝ եթէ յաղթուէր՝ ամօթն պիտի նորան սպանէր, իսկ եթէ յաղթէր՝ բաց յայնմանէ՝ որ շահ ինչ պիտի չունենար, թշնամիք պիտի աւելի կատաղէին, և բարեկամք պիտի զչարէին. Ո՞ր աշխարհի մէջ կայ այսպիսի անկեղծ ճշմարիտ բարեկամութիւն, որ մարդոյ բաղդաւորութիւնն ազատ մնայ իւր մերձաւորի նախանձաբեկութենէն։ Այդ միայն եդեմական դրախտումն պիտի որոնենք. Եւրոպա, Ասիա, Ափրիկէ, Ամերիկա՝ չենք գտնիր։ Իսկ վերին Երուսաղէմի ճանապարհին՝ դեռ երկաթուղի չկայ, և ոչ շոգենաւք երթևեկ են անում, չգիտեմ

*քինչ պատճառաւ։ Մի հարուստ հայազգի վաճառական կայր հին աստրախանցի Յոհաննէս Եգուլեան՝ Պուճուր մականունեալ, որ 1822 թուին վերջին ամիսներն իւր բոլոր աստուածապարգև ճոխութիւնն կտակաւ աւանդեց իւր սանին՝ Ղազար Յոհաննէսեան Պալէեանին, որոյ նախնին էր Պալի իշխանն Դաւիթ-բէկի զինակից։ Այս Ղազարն էր մի զուարթամիտ ծիծաղաշէմ երիտասարդ համարձակախօս, վասն որոյ և ասում էին «լպստած Ղազար». իւր հօրէն չունէր ստացած ինչ, որովհետև անյաջողութեան պատահելով տնանկացել էր իւր ծերութեան հասակի մէջ. Ղազար իւր աշխատանօք ունէր վաստակած մինչև երկու հազար թուման, ունէր մի եղբայր անպիտան և աղքատ Գրիգոր անուն, և երկու քոյր, որոց մին Եւայ կոչեցեալ՝ էր արդէն հարսնացած, և երկրորդն Ծաղիկ՝ էր օրիորդ գեղեցիկ։*

*(Կը շարունակուի)*

# ՂՐԻՄԻ ՀԱՅԵՐԸ*)

## (Պատմական համառօտ տեսութիւն)

**Ա. մաս**

### I

*Միջնադարեան քաղաքական ալեկոծութիւնները Հայաստանում, յոյների, արաբների և սելջուկ Թուրքերի յարձակումներն ու աւերածութիւնները շարունակ ստիպում էին հայերին թողնել իրանց մայրենի հողը և օտար երկնքի տակ որոնել կեանքի և գոյքի ապահովութիւն: Պանդխտական գաւազանը ձեռքին՝ հայը դիմում էր դէպի Պարսկաստան, Հնդկաստան, Թաթարստան և ծաղկեցնում ու շէնացնում այդ երկիրները. հաստատւում էր Տաւրոսի բարձունքներում, հիմնում հայկական իշ-*

---

*) *Սոյն տեսութիւնը կազմելիս մենք օգտուել ենք հետևեալ աշխատութիւններից. 1) Հ. Մ. Բժշկեան, «Ճանապարհորդութիւն ի Լեհաստան» և այլն,* 2) «Записки Одесскаго Общества Исторіи и Древностей», V *հ.,* VI *հ. և* VIII *հ., 3) Պալասանեան Ս., «Պատմութիւն հայոց», 4) Երուանդ Շահազիզ, «Նոր-Նախիջևան և Նոր-Նախիջևանցիք», 5)* Дубровинъ, «Присоединеніе Крыма», т II, *6) Լէօ, «Յովսէփ կաթողիկոս Արղութեան», 7) Հ. Ք. Քուշներեան, «Խրիմու հայոց գաղթականութիւնը», 8)* Виноградовъ, «Θеодосія», (истор. очеркъ), 9) Уманецъ, «Историческіе разсказы о Крымѣ», *10) Յ. Տէր-Աբրահամեան, «Պատմութիւն Խրիմու», 11)* «Вѣдомость о населеніи Тавр. губ.», *Խ. վ. Ստեփանէ, «Խրիմու ս. Խաչ վանքը», 13) Սուրխաթեան, «Ղրիմի հայոց վանքը», («Մուրճ» 1903 թ.) 14) Կ. Եզեան, «Բռնի միութիւն հայոց Լեհաստանի»:*

*Բացի վերոյիշեալներից մեզ սիրալիր կերպով օգնեցին Ղրիմի հետևեալ քաղաքների ծխատէր քահանաները իրանց վիճակագրական տեղեկութիւններով ներկայ հայերի մասին. Սիմֆերոպոլի՝ տէր-Երուանդ Նալբանդեան, Ղարասուբազարի՝ տէր-Աստուածատուր Մեղնիկեան, Թէոդոսիայի՝ տէր-Արշաւիր Վարդանեան, Հին-Ղրիմի՝ տէր-Դաւիթ Քէշիշեան, Կերչի՝ տէր-Օգսենտիոս Զորայեան, Օրբազարի՝ տէր-Օգսենտիոս Հայրունի: Տեղեկութիւններ են հաղորդել նաև Ս. Գրիկեանը և ուսուցիչ Վ. Բաբիեանը: Վերոյիշեալ անձանց յայտնում ենք մեր խորին շնորհակալութիւնը:* Պ. Թ.

խնամակալութեան մի անկախ բեկորը ու մամելուքների հարւածների տակ քայքայուելով՝ այնտեղից էլ կրկին գաղթում, դարձեալ առաջ գնում դէպի Յունաստան, ցրվում յունական գաղթավայրերը—որովհետև բիւզանդական կայսրութեան մայրաքաղաքումն էլ նրան հանգիստ չէին թողնում կրօնական հալածանքներով—ու այնտեղերում փնտռում՝ քաղաքական փոթորիկներից հեռու խաղաղ զարգացումն։

Բիւզանդական դէպի անկումն դիմող կայսրութեան ծաղկեալ գաղթավայրերից մէկն էր համարվում, X դարի կէսերին, Տաւրիկեան Թերակղզում Խերսօնէսը, որը իր ազատ ինքնավարութեամբ, եւրօպական վաճառականութեամբ ու տաւրիական թափառական ցեղերի վրայ ունեցած ազդեցութեամբ փառաւոր դիրք էր գրաւել վերոյիշեալ Թերակղզու հարաւային ափերի սքանչելի անկիւններից մէկում։ Նրա ազդեցութիւնը տարածվում էր Տաւրիկեան Թերակղզու հարաւային ծովափնեայ բոլոր քաղաքների վրայ, որովհետև ամենի մէջ էլ կային յոյն գաղթականների մեծ բազմութիւններ։

Անշուշտ Հայաստանի աղէտալի վիճակը—հայ իշխանների Փոքր-Ասիա տեղափոխուելը, բիւզանդական կենտրօնական իշխանութեան անբարեացակամ, նոյն իսկ թշնամական վերաբերմունքը—ստիպած պիտի լինէր հայերին X դարի վերջերին և XI-ի սկիզբներին երևալ Տաւրիկեան Թերակղզու Կաֆա (այժմ Թէոդոսիա), Սուկտէա (այժմ Սուդակ) և Խերսօնէս քաղաքներում։

Պէտք է խոստովանել, որ պատմական փաստերը, որոնց վրայ հիմնուելով ապացուցանում են հայերի գոյութիւնը Ղրիմում X և XI դարերում՝ շատ կցկտուր են և թերի։ Չկայ մանրամասն տեղեկութիւն Ղրիմ գաղթողների թուի մասին, որտեղից գաղթելը և որ ժամանակներում, այլ միայն հին ու կոտր արձանագրութիւններ, պատմական յիշատակութիւններ և աւերակ վանքերի ու եկեղեցիների խաչքարերը վկայում են հայերի գոյութեան մասին Ղրիմում, որոնք իսկապէս XIX դարի 60—80-ական թուականների գիտական հետազօտութեանց արդիւնքն են։

Ղրիմի հայերի պատմութեամբ առաջին անգամ հետաքրքրուել է XVIII դարի վերջերին Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեանը, այն ժամանակուայ Ռուսաստանի հայոց թեմակալ առաջնորդը, որը քաղելով Նոր-Նախիջևան տարած Յայսմաւուրքի յիշատակարանից իր նիւթերի մեծ մասը՝ սկսել է գրել ղրիմեցոց գաղթականութեան նկարագիրը։ Սակայն նա

իր այդ աշխատութիւնը վերջացնել չէ կարողացել, շնորհիւ քաղաքական էլ աւելի ծանրակշիռ խնդիրների, որոնք յուզում էին XVIII դարի վերջերին ոչ միայն Յովսէփ արքեպիսկոպոսին, այլ և բովանդակ Կովկասն ու գլխաւորապէս կիսանկախ հայկական իշխանութիւնները։

Նրա մահուանից յետոյ մնացած ձեռագիր այդ աշխատութիւնից օգտուել է Սեստրենցեվիչ Բօգուշ կաթոլիկ մետրոպոլիտը, երբ ռուսների Տաւրիկեան թերակղզին գրաւելուց յետոյ՝ գրել է ֆրանսերէն լեզուով Տաւրիայի պատմութիւնը։

Սեստրենցեվիչը խօսելով Ղրիմի հայերի գաղթականութեան մասին,—քաղելով, ինչպէս արդէն ասացինք, Յովսէփ արքեպիսկոպոսի ձեռագրից,—ասում է, թէ Ղրիմի հայերը անեցի են և թաթարների 1262 թուին Անի քաղաքի վրայ յարձակուած ժամանակ՝ գաղթել են Ախ-Սարայ, այնտեղից էլ Ղրիմ 1340 թուին։

Սակայն Սեստրենցեվիչի յիշած թուի և ազգային յիշատակարանի (Յայսմաւուրքի) ցոյց տուածի միջև կայ մի 10 տարուան սխալ, որովհետև վերջինիս հաստատութեամբ անեցի հայերի գաղթականութիւնը Ախ-Սարայից Ղրիմ տեղի է ունեցել 1330 թուին։ Բացի այդ՝ պատմական փաստերը յայտնի ցոյց են տալիս, որ 1262 թուի գաղթականները գնացել են Լեհաստան և ոչ Թաթարստան։

Այնուամենայնիւ Սեստրենցեվիչի այդ կարծիքը, հայերի Ղրիմ գաղթելու մասին, երկար ժամանակ տիրապետող հանդիսացաւ, մինչև նորագոյն հետազօտութիւնները փոքր առ փոքր պարզեցին, որ հայերը աւելի վաղ են երևացել Ղրիմում, քան ենթադրում է Սեստրենցեվիչը։

Ա.—Թէոդոսիայի հնութեանց թանգարանում գտնուող մի յասպիս քարի վրայ գրուած է հետևեալ արձանագրութիւնը. «Բարեխաւս է սուրբ նշանքս Գրիգորին եւ իր զաւակին» թուականն է ՆՀԶ *(1027)*։

Բ.—Յունական Սինաքսարի (Յայսմաւուրքի) լուսանցքներում գրուած յիշատակութիւնը, թէ 1292 թուին հայերը Սուկտէյայում (Սուղակում) Զատիկը տօնել են ապրիլի 16-ին, մինչդեռ միւս քրիստոնեաները (յոյները)՝ ապրիլի 24-ին։ Անտարակոյս այդ մասին հայ և յոյն հոգևորականների մէջ վիճաբանութիւն տեղի ունեցած պէտք է լինէր, որ վերջիններս պարտք են համարել մինչև անգամ արձանագրել հայերի այդ «հերետիկոսութիւնը»։

Գ.—Զատկի տօնի կատարման առիթով եղած վէճը շատ հին ժամանակներից գոյութիւն է ունեցել Սուկտէյայի հայերի

և յոյների միջև։ Եւ դեռ 1006 թուին յոյները Զատիկը տօնել են ապրիլի 6-ին, իսկ հայերը յետաձգել են ապրիլի 13-ին։ Հայ և օտար պատմաբաններից ոմանք կարծում են, որ հայերը բաւական թուով պէտք է լինէին Սուկտէյում, որ յոյների առանձին ուշադրութիւնն են գրաւել։

Մեզ թւում է նաև, որ այդ վէճերը կայսրութեան կենտրոնական վայրերում տեղի ունեցող կրօնական բանակռիւների և հալածանքների հեռաւոր արձագանքը պիտի լինէին։

Դ.—Որ հայերը աւելի վաղ են եղել Ղրիմում, քան 1330 կամ 1340 թուականները՝ հաստատում է նաև Յովհաննէս XXII պապի բուլլան (կոնդակը) 1318 թուին՝ ուղղուած կաֆայեցի հայերին՝ առաջնորդին, հոգևորական դասին և քաղաքացիներին։ Հայերը այդ ժամանակ ունէին Կաֆայում իրանց համար առանձին թաղ, եկեղեցիներ, որոնցից մինը արդէն կէս աւերակ էր, և առաջնորդարան։ Պապը իր այդ բուլլայով յորդորում էր կաֆայեցի հայերին թողնել եկեղեցական-հայկական մի քանի ծէսերը և ընդունել լատինականը։ Եւ այդ առթիւ,— ասում է Գաբրիէլ արքեպիսկոպոս Այվազեանը,—հայերի մէջ առաջ եկան հակառակութիւններ և անհամաձայնութիւններ։

Ե.—Մի խոշոր պատմական փաստ էլ է՝ Կաֆա քաղաքի կանոնադրութիւնը, կազմուած գենօվական հասարակապետութեան կողմից 1316 թուին։ Այդ կանոնադրութեան (reglement) մէջ յիշվում են հայկական եկեղեցիներ, որոնք գոյութիւն ունեն շատ հին ժամանակներից, իսկ մինը նրանցից արդէն կիսաքանդ դրութեան մէջ է գտնվում։

Զ.—Վերջապէս հայերի գոյութիւնը Ղրիմում մինչև անեցիների գալը հաստատվում է նաև Հին-Ղրիմից 3 վերստ հեռու անտառում գտնուող ս. Խաչ վանքում Գաբրիէլ արքեպիսկոպոսի գտած հետևեալ արձանագրութեամբ. «Բարեխաւս Ե սուրբ նշանըս ճերմակ Խաչիկ պապաքին եւ ծնողաց Շահիպի փաշա խթ եւ զւկց թվ ՉԿ (1311 թ.)*։

Է.—Յիշատակութեան արժանի է նաև Պետրուշկևիչի հրատարակած յօդուածը «Գալիցիական պատմական ժողովածուի» մէջ (Галицкій историческій сборникъ), որտեղ նա հիմնուելով

---

*) Նշանակալից է այն հանգամանքը, որ սոյն արձանագրութիւնը ո՛չ Խորէն եպիսկոպոս Ստեփանէն և ոչ էլ պ. Սուրխաթեանը չեն գտել ու յիշել իրանց գրուածքներում ս. Խաչ վանքի արձանագրութիւնների մասին գրելիս։ Երևի ժամանակի ընթացքում եղծուել է այդ թանկագին յիշատակարանը, որին անշուշտ քիչ չեն նպաստել և նոյնքան եղծարար ու անհոգ վանահայրերն ու կառավարիչները։

Զացկիի՝ Լվովի դիւանատանը իր գտած Թէոդոր Դիմիտրիեվիչի՝ հրովարտակի վրայ, կարծում է, թէ Կիեվի իշխան Թէոդոր Դիմիտրիեվիչը հրովարտակով կանչել է կազարաթցի (հին-ղրիմցի) հայերին իրան օգնութեան 1062 թուին։ Հրովարտակը այսպէս է սկսվում. «Oto kniazia Theodora Dmytrowicza kosochackim Armenom»*). Հրովարտակի մէջ յիշուած կոսոխացի խօսքը Պետրունկեվիչը համեմատում է կազարացի բառի հետ, համարելով կոսոխացին կազարաթցու աղաւաղումը, ու եզրակացնում է, թէ Թէոդոր Դիմիտրիեվիչը՝ Կիեվի իշխանը 1062 թուին իրան օգնութեան կանչել է կազարաթցի հայերին։ Սակայն Պետրունկեվիչը սխալմամբ կարծում է, թէ Սուրխաթին (այժմեան Հին-Ղրիմին) Կազարաթ էլ էին կոչում, այն ինչ Սուրխաթը կամ Սօլխաթը այժմեան Հին-Ղրիմն է, իսկ Կազարաթը հայկական մի աւան էր և գտնվում էր Հին-Ղրիմից դէպի արեմուտք 2—3 վերստ հեռաւորութեան վրայ վերջինիցս, անտառապատ ձորում։ Կազարաթը իր բազմամարդ և հարուստ ժամանակը համարվում էր ս. Խաչ վանքի ծուխը։

Պետրունկեվիչի վերոյիշեալ ենթադրութիւնը կրկնել է նաև Օդեսսայի Հնագիտական Ընկերութեան հանգուցեալ փոխ-նախագահ Ն. Մուրզակեվիչը «1316 թ. Կաֆայի կանօնադրութեան» ետևում տպած ծանօթութեան մէջ։

Կիեվի իշխան Թէոդոր Դիմիտրիեվիչի հրաւէրի մասին խօսում է նաև XVII դարի լատին անծանօթ մի հեղինակ։ Նա հետևեալն է գրում. «Ձքուականաւն 1062 իշխանն Ռուսիոյ Թէոդոսիոս որդի Դիմիտրի կոչեաց ի մերձաւորն Խերսոնեայ զՀայս առ ի խաղաղացուցանել զհպատակս իւր ճեստեալ. յորոյ ի կոչ նորա եկին Հայք բազումք, և իբրև յաղթահարեցան ապստամբքն օգնութեամբ Հայոց՝ յորդորելով զնոսա իշխանին և տալով պէսպէս արտունութեանց (որ ի վերջնում ժամանակի հաստատեցան յարքայիցն Լեհացւոց)՝ կացին և բնակեցին Հայք ի քաղաքս Ռուսաց՝ մանաւանդ ի Կիեվ, ի Վլադիմիր, ի Լուցկ, ի Կամենեց, ի Սնեատին, ի Գալիչ և յայլս ևս, ընդ որս արժան է յիշատակել զԵազլովեց, զՋամոստիէ, զՊոդչայցի, զԲրուտի, զԺվանեց, զԳորոդենկայ և զՍտանիսլաւով, յորս կոչեցին զՀայս իշխանք Լեհաց բազմօք ամօք յետոյ վասն իւրեանց վաճառականութեան յաշխարհացն Մոլդաւիոյ և Վալախիոյ»**)։

---

*) „Записки Одесскаго Общества Исторіи и Древностей“, т. V“, երես 828 ծանօթ. 90։

**) Կ. Եզեան. «Բանի միութիւն Հայոց Լեհաստանի», գիրք Գ., «Ընդարձակ տեղեկութիւնք զմիանալոյ ժողովրդեանն Հայոց Լեհաստանի» և այլն, երես 152—153։

Արդ՝ այժմ հարց է ծագում, թէ Ե՞րբ են հայերը առաջին անգամ երևացել Ղրիմում, թուով ո՞րքան են եղել և Հայաստանի ո՞ր գաւառիցն են գաղթել։ Այդ հարցերին միայն մասամբ պատասխանում են պատմաբանները, հիմնուելով գիտական հետազօտութիւնների վրայ։

Ռայնալդ գիտնականը կարծում է, թէ Ղրիմի հայերը եկել են Փոքր-Ասիայից։ Նրանք ունենալով առևտրական յարաբերութիւն Սև և Ազով ծովերի նաւահանգիստ-քաղաքների հետ՝ անշուշտ բնակութիւն էլ են հաստատել Ղրիմում։ Աւելի հաւանական է կարծում Ռայնալդը, որ Ղրիմի հայերը սարակինոսների ահից գաղթած հայեր լինեն*)։

Աւելի հիմնաւոր և պատճառաբանուած բացատրութիւն է տալիս Գաբրիէլ արքեպիսկոպոս Այվազեանը։ Նա ասում է. «Արդէն X դարից սկսած հայերը բնակութիւն հաստատելով Փոքր-Ասիայում ու Կ. Պօլսին հարևան տեղերում՝ դիմեցին Սև ծովի ափին գտնուող Տրապիզոն, Կաֆա, Սուդակ և այլ քաղաքներ, մինչև իսկ հաստատուեցին Դնեպր գետի ափերին։ XI դարում այդ տեղափոխութիւնը աւելի սաստկացաւ Անի քաղաքի կործանման պատճառով Սելջուկների սուլթան Ալփասլանի ձեռքով (1064 թ.)։ Կաֆայեցի հայերի բարեկեցիկ վիճակը գենովացիների հովանաւորութեան ներքոյ աւելի նպաստեց այդ հանգամանքին և շարունակ գրաւում էր Հայաստանում և Փոքր Ասիայում ապրող ազգակիցներին դէպի իրան»**)։

Վերոյիշեալ հարցերի վերաբերմամբ հետևեալ տողերն ենք կարդում Օդեսայի Հնագիտական Ընկերութեան հանգուցեալ փոխ-նախագահ Ն. Մուրզակևիչի գրուածքում. «Սկսած 1021 թուից, երբ Վասպուրականի թագաւորը, տալով իր երկիրը Վասիլ կայսրին, ինքը տեղափոխուեց Կապադովկիա, գաղթականութիւն տեղի էր ունենում շատ յաճախ։ XII դարի հայկական պատմագիր Գրիգոր երէցը յայտնապէս մեղադրում է այդ բանում յոյներին։ Նկարագրելով 1160 թուին տեղի ունեցած դէպքերը՝ նա ասում է. «Յոյն կայսրները երբէք ոչ մի բան չեն արել քրիստոնեաների ազատութեան համար, այլ ընդհակառակն իրանք էին քաղաքների անկման և գաւառների նուաճման պատճառը։ Նրանց շնորհիւ հայերը ստիպուած էին թողնել հայրենիքը, իսկ անհաւատները բազմացան ու գրաւեցին

*) Nec Armeni. . qui a Saracenis suis pulsi sedibus in Taurica Chersoneso, agebant etc (Ann. ecclesiast a. a. 1318)։

**) „Записки Одесск. Общества Исторіи и Древностей", т. VI, стр. 550: „Замѣтка о происхожденіи Новороссійскихъ Армянъ".

Էրզրումը, Մելիտինէն, Սեբաստիան, Անի քաղաքը և շարունակեցին իրանց նուաճումը մինչև Կ. Պօլիս։ Այդ գաղթականութիւնը տեղի էր ունենում կայսրութեան պատկանած դէպի փոքր-ասիական երկիրները։ Պէտք չէ սակայն կարծել, որ գաղթողները այդ երկիրներով բաւականանում էին։ Կրօնական հալածանքների և Թիւրքական ասպատակութիւնների պատճառով հայերը ստիպուած էին որոնել աւելի ապահով վայր Ղրիմի յունական կօլօնիաներում... Հայերը բնակութիւն հաստատելով Ղրիմում, հաւանական է նոյն իսկ գենովացիների երևալուց էլ առաջ, ունեցել են Կաֆայում իրանց առաջնորդ եպիսկոպոսը և ապրել են առանձին թաղում»*)։

Հայերի դէպի Ղրիմ գաղթելու խնդրով զբաղուելով՝ պրոֆէսսօր Բրիւն հետևեալն է գրում. «Գիտնականների մեծ մասը, որոնք զբաղուել են խնդրովս՝ թէ ե՞րբ արդեօք բնակութիւն են հաստատել հայերը Ղրիմում, ընդունել են ընդհանրապէս Սեստրենցեվիչի կարծիքը, քաղած՝ իշխան Յովսէփ արքեպիսկոպոս Արղութեանի մահուանից յետոյ վերջինիս յիշատակարաններից։ Այդ յիշատակարանների համեմատ, Թաթարները նուաճելով Հայաստանը 1262 թուին երկրի բնակիչների մեծագոյն մասը տարել են և բնակեցրել այժմեան Կազանի, Աստրախանի գաւառներում, որտեղից անցել են Ղրիմ 1341 թուին, գենովացիների համաձայնութեամբ, և բնակուել են Կաֆայում և Սուդակի շրջակայքում»**)։

«Առանց մերժելու, որ շատ հայեր կարող եղած են անցնիլ ի Ռուսաստան, աշխարհին Մոնգոլաց լուծին տակ ընկնալէն վերջ, որք ապա կտրելով անցնելով անապատները եկել են բնակութիւն հաստատելու Ղրիմու քաղաքաց մէջ։ Մ. Իւրգեվիչ յայտնի կը բացատրէ, որ Հայոց գաղթականութիւնք եղած են այլ և այլ ճանապարհներով և որ արքեպիսկոպոսին ցուցուցած թուականէն շատ առաջ»***)։

Վերոյիշեալ կարծիքները մասամբ պարզում են գաղթականութեան բնոյթը, առանց սակայն ցոյց տալու գաղթողների քանակութիւնը և ո՞ր գաւառից լինելը։

Մեզ թւում է, որ X դարի սկիզբներին հայեր Կաֆա-

---

*) „Записки Од. Об. Исторіи и Древностей“, т. V“, стр. 828, прим. 90.

**) «Պատմական և տեղագրական ծանօթութիւններ Խազարաց աշխարհի իտալացի գաղթականութեանց մասին», Պետերբուրգ, 1866 թ.։

***) Հ. Ք. Քուշներեան, «Պատմութիւն գաղթականութեան Ղրիմու Հայոց», երես 98.

յում և Սուկտէյայում եղել են, և թուով այնքան, որ հիմնել են եկեղեցիներ, որի պերճախօս ապացոյցն է վերև յիշած արձանագրութիւնը՝ «Բարեխաւս է սուրբ Նշանքս Գրիգորին և գաւակին թիւ ՆՀԶ» (1027) և դարձեալ այն կրօնական վէճերի խուլ արձագանքը, հայերի և յոյների մէջ, որը մենք տեսնում ենք յոյն Սինաակարի (Յայսմաւուրքի) լուսանցքներում։ Երևի առաջին անգամ երևացող հայերը Ղրիմում պէտք է լինէին վաճառականներ, որոնք այդ դարերում (X և XI) արդէն ճանապարհորդում էին աշխարհիս յայտնի ամենահեռաւոր տեղերը։

Սակայն գաղթականական հոսանքը Փոքր-Ասիայի ծովափնեայ քաղաքների վրայով աւելի մեծացել է XIII դարի ընթացքում, երբ Հայաստանում քաղաքներն ու գիւղերը մոխիր էին դառնում մոնղոլական հրոսակների ձեռքով և բնակիչները կամ մորթոտվում կամ գերի էին տարվում Թաթարստան և այլ երկիրներ։

Ահա հէնց այդ ժամանակները հայերը զանազան ճանապարհներով գաղթելով արեան և կոտորածի վայրերից՝ բազմանում են Ղրիմում և հիմնում բաւական թուով եկեղեցիներ ու վանքեր։ Եւ Ղրիմի հայերի բազմութեան նայելով՝ հոգևոր բարձրագոյն իշխանութիւնը նոյնպէս հիմնում է Ղրիմում թեմ, կամ գուցէ հէնց իր շուարած ու ցրուած հօտի հետ գալով՝ գաղթողների թեմի առաջնորդը հաստատում է առաջնորդական թեմ կամ աթոռ Ղրիմում—Կաֆայում։

Նկատենք նաև սա, որ եթէ Պետրունկևիչի և անծանօթ յատին հեղինակի կարծիքները ճիշտ են, թէ Թէոդոր Դիմիտրիեվիչը կազարաթցի կամ խերսոնցի հայերից օգնութիւն է ստացել, այն ժամանակ պէտք է ենթադրենք, որ X դարի կիսերին Ղրիմում հայերը, յիրաւի, մի այնպիսի հզօրութեան էին հասած, որ մինչև անգամ օտար տէրութիւններին օգնութեան էին գնում զօրքով։

Բայց մեզ դժուար հաւատալի է թւում, որ այդ հրաւէրն ուղղուած լինէր կազարաթցի կամ խերսոնցի հայերին։ Մեր կասկածը աւելի հաւանական է դառնում, երբ համեմատում ենք, «կոսոխացի» խօսքը Կարամզինի «Исторія Государства Россійскаго» գրքի III հ. ծանօթութիւնների մէջ յայտնած բացատրութեան հետ, թէ ռուս կնեազները Կովկասի հայերին անուանում էին կոսոխացի։

Տարօրինակ է նաև մի այլ հանգամանք, որ հայերի այդքան բազմութիւն ունեցող Ղրիմում այդ դարերում (XI—XIII) մենք չենք գտնում մեծագործութիւնների յիշատակութիւններ.

և առ հասարակ գոնէ մինչև այժմս եղած հետազօտութիւնները երևան չեն հանել այդ մեծագործութիւնները։

Թողնելով այդ կէտը ապագայում տեղի ունենալիք հետազօտութիւնների պարզաբանութեանը, մենք նկարագրենք XIV դարին Ղրիմ գաղթող անեցիների գաղթականութեան գլխաւոր պատճառները։

## II

Մինչդեռ Ղրիմի հայկական գաղութը բարեկեցիկ վիճակի մէջ էր գտնվում՝ հեռու քաղաքական փոթորկալից շրջաններից, Հայաստանը բարբարոս հրոսակների ասպատակութիւններից աւելի ու աւելի քար ու քանդ էր լինում ու աւերակների կոյտ դառնում։

XIII դարի առաջին կիսում Հայաստանը ենթարկուեց մօնղօլական թաթարների կործանիչ յարձակմանը Չարմաղան խանի առաջնորդութեամբ (1236 թ.)։ «Սարսափելի տեսարան էր ներկայացնում այս մեծագլուխ, անմօրուս, նեղաչուի, տափակ-քիթ, կարճոտն, սրաձայն բարբարոսների բազմութիւնը, որոնք վազուկ ձիաների վրայ հեծած՝ սրով ճանապարհ էին բաց անում եռևներից սայլերով եկող կանանց ու որդւոց համար։ Մարախի բազմութեամբ ծածկեցին նոքա բոլոր երկիրը և անխնայ կոտորեցին ամեն հասակի ու պայմանի մարդիկ, կաթնակեր մանուկները քարերին էին խփում. մատաղահաս աղջիկները յափշտակվում էին. հոգևոր հովիւների արիւնը խառն հոսում էր անմեղ հօտի արեան հետ. ոչ մայրերի արտասուքներին էին ողորմում և ոչ ծերերի սպիտակ ալիքին խղճում։ Հայոց աշխարհը ծածկուեցաւ դիակներով,—ասում է Կիրակոս Գանձակեցի ժամանակակից պատմիչը.—ոչ ոք չկար որ թաղէր նոցա, որովհետև կենդանի մնացողները անծանօթ տեղեր թագչում էին անօրէնների սրից ազատուելու համար»*)։

Ահա այս բարբարոս կործանիչ զօրութիւնը, անխնայ աւերելով ճանապարհին գտնուած քաղաքներն ու գիւղերը, վերջապէս մօտեցաւ Հայաստանի մայրաքաղաքին՝ Անիին։

Այստեղ էին պատսպարուել շրջակայքի բնակիչները, յոյս ունենալով պաշտպանուելու քաղաքի ամուր պարիսպների ետևում։

---

*) Ս. Պալասանեան, «Պատմութիւն Հայոց», երես 439.

Զարմաղանը սկզբում, ուղարկելով դեսպաններ, պահանջեց պաշարուածներից առանց ընդդիմադրութեան յանձնել քաղաքը իրան։ Սակայն ժողովուրդը յարձակուեց դեսպանների վրայ, մինչ նրանք վերադառնում էին իշխանների մօտից, ու կոտորեց նրանց։ Զայրացաւ խանը և ամբողջ զօրութեամբ սաստիկ պաշարեց Անին և բուռն յարձակմամբ կամենում էր հիմնայատակ անել քաղաքի վիթխարի ու հզօր պարիսպները։ Դեռ երկար ապահով ու ազատ կարող էին մնալ պարիսպների ետեւում պաշարուածները արիւնռուշտ բարբարոսների բռնութիւններից, եթէ սովը նրանց չնեղէր։ Սովից թուլացած և այլ ևս անկարող լինելով կռուել թշնամու դէմ՝ քաղաքը անձնատուր եղաւ Զարմաղանին և բարբարոսների վայրագ գազանութիւններին ասպարէզ դարձաւ։

Անողորմաբար սպանեցին թաթարները բնակիչների մեծ մասին, աւերեցին ու կրակի մատնեցին քաղաքի հրաշակերտ շինութիւնները՝ պալատանման տներն ու եկեղեցիները, և աւերակների մի կոյտ դարձաւ երբեմն շէն ու փարթամ Անին…

«Անդ էր տեսանել տեսիլ ողորմագին,—պատմում է ղրիմաբնակ անեցին Նեսվիթայի Յայսմաւուրքի յիշատակարանում,—որ ծնողք և ծնունդք ի միասին կոտորեցեալք և դիզացեալք ի վերայ միմեանց իբրև դերբուկս քարանց կուտակեալք, քահանայք և պաշտօնեայք ցիր և ցան անկեալ ընդ երեսս դաշտացն, արբեալ երկիր յարենէ և ի ճարպոյ վիրաւորացն…»*)։

Զարմաղանի աւերիչ արշաւանքի հետեւանքն եղաւ այն, որ Անիի և նրա շրջակայքի բնակիչները, թողնելով իրանց «ոսկեզօծ» պալատներն ու ծաղկաւէտ դաշտերը, փախստական հեռացան մայր երկրից թուով 40,000 հոգի Ախ-Սարայ, Աստրախան և Կազան քաղաքները և այնտեղ բնակութիւն հաստատեցին 1299 թուին։

Այստեղ աւելորդ չենք համարում ընդգծել հայ և օտար պատմիչների միջև եղած խոշոր հակասութիւնը։ Հայ պատմիչները, նկարագրելով Անի քաղաքի աւերմունքը, պնդում են, թէ հայերր գաղթել են Ախ-Սարայ, իսկ օտար պատմիչները ասում են, թէ հայերը գերի են տարուել Թաթարստան։

Մեզ թւում է, որ օտար պատմիչները սխալվում են, քանի որ գաղթականութիւնը անմիջապէս արշաւանքին չէ յաջորդել, այլ բաւական երկար ժամանակ է անցել (60 տարի), մինչև գաղթականները, չդիմանալով թաթարների անընդհատ ար-

*) Մ. Բժշկեան, «Ճանապարհորդութիւն ի Լեհաստան», երես 337.

շաւանքներին, պատրաստուած հեռանում են Անիից, ինչպէս պատմում են, մինչև անգամ տաճարների դռներն էլ հետներն են տանում։

Ախ-Սարայում անեցիները մնացին մօտ 60 տարի։ Թէ ինչ գործեր կատարեցին նրանք այդ ժամանակամիջոցում, մեզ մանրամասն յայտնի չէ, միայն եղած յիշատակարաններից կարելի է եզրակացնել, որ քաղաքացի հայերը մեծ անուն են հանել վաճառականութեան մէջ և առևտրական կապեր հաստատել Պարսկաստանի և Իտալիայի հետ։ Հայերը կազմել են նաև հայկական զինուորական խմբեր ու օգնելով թաթարներին նրանց պատերազմներում՝ մեծամեծ ծառայութիւններ են մատուցել վերջիններիս։

Սակայն թաթար խանութեան ներքին խռովութիւնները, հայերի՝ արտաքին թշնամիների յարձակումներից նեղուելը, հարկերի ծանրութիւնը, ճանապարհների անապահովութիւնը, որը անհագին վնասներ էր հասցնում վաճառականներին, և վերջապէս թաթարների մահմեդականութիւն ընդունելը, որից յետոյ վերջիններս թշնամական վերաբերմունք սկսեցին ցոյց տալ դէպի հայկական կրօնը, ստիպեցին հայերին թողնել այդ ժամանակաւոր ապաստարանը ու նորը որոնել։

Եւ հայերը բանակցութիւն են սկսում Ղրիմի գենօվացի իշխանների հետ, որպէս զի վերջիններս թոյլ տան նրանց գաղթելու Ղրիմ։ Գենօվացիները սիրով համաձայնվում են։ Եւ 1340 թուին անեցի գաղթականների մեծ մասը, թողնելով Ախ-Սարայն ու զէնքը ձեռքին պատերազմելով ճանապարհ է ընկնում դէպի ընտրեալ նոր գաղթավայրը, ուր գալով գաղթողները բնակութիւն հաստատեցին Կաֆայում, Սուրխաթում, Կազարաթում և նրանց շրջակայ գիւղերում։

Եկուոր հայերը, ընտելացած՝ Թաթարստանի չարքաշ կեանքին ու արկածալից ճանապարհորդութիւններին, մտաւորապէս սնուած հայրենի երկրում թողած մեծագործութեան յիշատակներով, եկան Ղրիմ, որպէս զի այնտեղ էլ կանգնեցնեն հայկական ճարտարապետութեան կոթողներ և յաւերժացնեն իրանց յիշատակը։

Արդարև՝ անեցի գաղթական հայերը, ինչպէս երևում է նրանց շինած եկեղեցիներից ու վանքերից, այն ժամանակուայ մտաւորապէս բարձր կանգնած հայերից էին և այդ իսկ պատճառով էլ մի անգամից գրաւեցին պատուաւոր դիրք Կաֆայում և նրա հարևան քաղաքներում։ Նրանք կարճ ժամանակամիջոցում ճոխացան ու հարստացան մինչև այն աստիճան, որ օտար

պատմիչները Կաֆային Armenia marittima անունն էին տալիս, իսկ Եւգինէոս IV պապը, երևի հայերին գրաւելու մտքով, իր կոնդակում Սուդային նոյն իսկ «Մեծն Հայաստան» է անուանում։

Բացի այդ՝ հայերի գալով գենովացիների դրութիւնն էլ աւելի ամրապնդուեց Տաւրիկեան թերակղզու ծովափնեայ քաղաքներում և տարածուեց Ենի-Կալէից մինչև Բալաքլավա։

Եւ որովհետև Ղրիմի հայերը գենովացիների հետ համարեա կողք կողքի ապրել են և գործել Ղրիմում մօտ 150 տարի, ուստի կարևոր ենք գտնում մի քանի խօսք ասել նաև նրանց մասին։

## III

X դարից սկսած գենովացիների փոքրիկ հասարակապետութիւնը սկսեց ընդարձակուել ու առևտրական կապեր հաստատել եւրոպական զանազան երկիրների հետ։ Գենովացիների վաճառականութիւնը մեծ մասամբ կատարվում էր ծովով, և այդ գործում նրանք մեծ մրցակից հանդիսացան իրանց հարևան վենետիկցիներին ու պիզացիներին։

Հասարակապետական այդ փոքրիկ տէրութիւնը XIII դարի կիսերին մինչև անգամ աշխարհակալական ձգտումներ էլ ունեցաւ՝ տիրելով Կորսիկա և Սարդինիա կղզիների մի քանի գաւառներին։

Տեսնելով որ վենետիկցիները հիմնում են Ղրիմի ծովափում կօլօնիաներ, գենովացիք էլ նրանց օրինակին հետևելով՝ XIII դարի սկիզբներին երևացին Կաֆայում ու Սուդակում, որտեղ հիմնեցին իրանց վաճառականական կօլօնիաները։ Սակայն գենովական այդ կօլօնիաները սկզբում անկարող եղան զարգանալ մօնղօլական թաթարների արշաւանքի պատճառով, ո֊րոնք 1227 թուին յանկարծակի և անսպասելի կերպով երևալով Հարաւային Ռուսաստանում՝ հեղեղեցին նաև Ղրիմի դաշտավայրերը, կոտորած ու աւեր սփռելով չորս կողմը։ Այդ անըսպասելի երևալուց ու Կալկա գետի ափերում ռուս ու գօման միացեալ զօրքերի հետ կռուելուց ու յաղթելուց յետոյ՝ թաթարները կրկին քաշուեցին յետ և 12 տարի այլևս չերևացին։

1239 թուին թաթարները կրկին արշաւեցին Բաթու խանի առաջնորդութեամբ, որը գալով նուաճեց ամբողջ Ռուսաստանը և Ղրիմը և թափառական ցեղերի մի մասն էլ հաստատեց վեր-

ջինիս դաշտավայրերում։ Այդպէս՝ իրանց աշխարհակալական արշաւանքները վերջացնելուց յետոյ՝ Թաթարները հիմնեցին Վոլգայի ափերում Ղպչաղների կամ Ոսկէ Հորդայի ընդարձակ խանութիւնը, որի սահմանները տարածվում էին Ուրալից մինչև Դանուբ գետը։

Ղպչաղների մայրաքաղաքը դարձաւ Սարայը, Վոլգայի ափին, որի շքեղ ապարանքներում հզօր խաներն էին նստում, շրջապատուած բազմաթիւ զօրքերով։ Այստեղ էին նրանք ընդունում նուաճած երկիրների պետերին իրանց ամենահասարակ ծառաների նման, և վերջիններս պարտաւոր էին մեծամեծ ընծաներ բաշխելու՝ խանին ու սրա շրջապատողներին, որ կրկին հաստատուեն հայրական իշխանութեան մէջ։ Հպատակ իշխանները պարտաւոր էին կատարել նաև խանի ամեն մի քմահաճոյքը, մինչև անգամ երկրպագել խանի հեթանոսական աստուածներին։ Ծանր էր թաթարական խանութեան լուծը․ հարկերի ծանրութիւնը, պատուի անարգումը, անձի ստորացումը, ճանապարհների անապահովութիւնը թափառական ցեղերից՝ յուսահատութեան մէջ էին ձգում շատերին… Մանաւանդ որ երկրի տէր իշխանները միանգամայն անզօր էին այդ բռնութիւնների առաջն առնելու։

Նորահաստատ խանութեան երրորդ ինքնակալը՝ Մանգոյ-Թիմուրը բաժանեց իր որդիների միջև նախորդների գրաւած Տաւրիկեան Թերակղզին և որդիներից Օրան-Թիմուրին էլ տուեց Սուրխաթը և Կաֆան իրանց շրջակայքով։

Օրան-Թիմուրը հաստատուելով Սուրխաթում 1266 թուին և անուանելով Ղրիմ՝ դարձրեց նրան իր մայրաքաղաքը, որտեղից և կառավարում էր իրան յանձնուած երկիրը։

Այդ ժամանակից առաջ սկիզբն առաւ Ղրիմի խանութիւնը, որը 60 տարի անցած՝ բաժանուեց միանգամայն կենտրոնական իշխանութիւնից և անկախ դարձաւ, երբ Ղպչաղների ընդարձակ խանութիւնը Ջինգիզ խանի թոյլ շառաւիղների օրով բաժանուեց ու այդ բաժանուած տէրութիւնից կազմուեցին նոր անկախ խանութիւններ՝ Աստրախանի և Կազանի։

Օրան-Թիմուրը, գալով Սուրխաթ, աշխատեց այդ քաղաքը շէնացնել ու մեծացնել։ Նա մեծ զարկ տուեց վաճառականութեանն ու արհեստներին, և Սուրխաթի բնակիչները, գլխաւորապէս կարաիմներն ու հայերը, կարճ ժամանակամիջոցում հարուստ վաճառականներ դարձան։ Նրանք ուղարկում էին իրանց ապրանքները նոյն իսկ Միջին-Ասիա, Հնդկաստան, Պարսկաստան և այնտեղերից էլ ստանում թանկագին արևելեան

գործուածքներ կարաւաններով։ Բացուեցին դպրոցներ, հիմնուեց դրամատուն, որի կառավարութիւնը Օրան-Թիմուրը յանձնեց կարաիմներին։ Ղրիմի խաների ջանքն եղաւ այդ շրջանում երկիրը ծաղկեցնել, աւերակ շինութիւնները վերանորոգել և Թափառական Թաթարներին նստակեաց կեանքի վարժեցնել։ Եւ այդ իսկ նպատակով նրանք տնկել տուին մեծ քանակութեամբ Թթենիներ, որ Թաթարները պարապեն շերամապահութեամբ։ Եւ Թաթար խաների (Ջինգիզ խանի շառաւիղների) իշխանապետութեան այդ շրջանը Սուրխաթում կուլտուրական առաջադիմութեան մի օրինակելի և գեղեցիկ շրջան է եղած։

Նրանք սիրով ընդունում էին եկուոր գենօվացիներին ու հայերին ու նրանց տեղ տալով՝ մեծամեծ արտօնութիւններ շնորհում։ Միայն գենօվացիների նպատակը լոկ վաճառականութեամբ զբաղուելը չէր։ Նրանք այդ արտօնութեամբ չբաւականացան։ Ծովափնեայ քաղաքներում „կօլօնիաներ հիմնելով՝ նրանք ձգտեցին անկախ լինել և այդ մտքով Բալդօ-Դօրիա և Անտօնիօ-դել-Օրտօ հասարակապետութեան ներկայացուցիչները բանակցութիւն սկսեցին Օրան-Թիմուրի հետ, որպէս զի վերջինս նրանց զիջէ Կաֆան։ Խանը համաձայնուեց ծախել Կաֆան, սակայն դրեց հետևեալ երեք պայմանները. 1) Թոյլ է տալիս բոլոր վաճառականներին ազատ գնել և վաճառել ուրիշ երկիրներից բերած ապրանքները. 2) Կարող են վաճառականները շինել Կաֆայում խանութներ՝ ապրանքները պահելու համար, իսկ քաղաքացիք՝ բնակարաններ. 3) Սակայն գենօվացիները պարտաւոր են մաքս վճարել Կաֆա ներմուծած և արտահանած ապրանքների համար։

Հասարակապետութեան ներկայացուցիչները ընդունեցին առաջարկուած պայմաններն, որից յետոյ խանը քաղաքի կառավարութիւնը յանձնեց գենօվացիներին։

Գենօվացիները ստանալով Կաֆան սկսում են շրջապատել ամուր պարսպով։ Քաղաքը զարդարում են գեղեցիկ շինութիւններով՝ տներով ու խանութներով, որոնք գտնվում էին սարի լանջին, Գենօվա քաղաքի նման ամֆիթէատրօնի ձևով։

Գենօվացիների այս աջողութիւնը շարժում է վենետիկցիների նախանձը, և նրանք 1296 Թուին Սօբերանցօ իշխանի (դօժի) առաջնորդութեամբ 25 պատերազմական նաւերով գալիս են գենօվացիներին նորահաստատ քաղաքից դուրս քշելու և նրանց տեղը հաստատուելու համար։

Բորբոքվում է յամառ ու արիւնահեղ պատերազմ։ Վենետիկցիները աւերելով Մարմարա ծովի ափերին գտնուած գե-

նօվական կօլօնիաները՝ պաշարեցին Կաֆան և երկար կռուելուց յետոյ տիրեցին։ Սակայն վերահաս ձմեռը մի կողմից, Թաթարների պատերազմական պատրաստութիւնը միւս կողմից, որոնք կամենում էին վենետիկցիներին դուրս վանել Կաֆայից, ստիպեցին վերջիններիս հաշտուել գենօվացիների հետ և կրկին թողնել Կաֆան նրանց։

Այս դէպքից յետոյ գենօվացիները նոր եռանդով շարունակեցին ծաղկեցնել իրանց կօլօնիաները և գրաւել Ղրիմի հարաւային ափերում գտնուած քաղաքները։ Աշխատաւոր ու ժրաջան այդ ժողովրդի ձեռքով կարճ ժամանակամիջոցում Ղրիմի հովիտները ծածկուեցին խաղողի այգիներով, ճանապարհների մեծ մասը հարթուեց, շինուեցին նորանոր ջրանցքներ ու ջրհորներ։

Բացի այդ՝ Կաֆա քաղաքի պաշտպանութեան համար շինեցին Ֆրանկ-Հիսար կոչուած բերդը, շրջապատուած ամուր և ատամնաւոր պարիսպներով։ Դրանով էլ չբաւականանալով Սուդակի քարաժայռի վրայ գտնուած կիսաւեր բերդի պարիսպները նորոգեցին, մէջը շինելով մի քանի ջրամբարներ (цистерны)։ Նրանց յաղթական զօրքը վանում էր ոչ միայն իրանց թշնամիներին Կաֆայից, այլ և ուրիշ տէրութիւնների օգնութեան գնում։ Հարիւրաւոր առագաստանաւեր անդադար մտնում էին բոլոր ծովափնեայ քաղաքների նաւահանգիստները՝ բերելով ամեն կողմերից անհամար հարստութիւն, որով ճոխանում ու հարստանում էր Կաֆայի եռանդուն ազգաբնակութիւնը։

XIV դարի 40-ական թուականներին հասարակապետութեան պատկանած նաւերի թիւը Կաֆայում հասնում էր 627-ի, չհաշուած փոքրերն ու մասնաւոր անձանց պատկանածները։ Գենօվացի վաճառականները շատ անգամ գնում էին թաթար խաների մօտ, նրանց աջող արշաւանքից վերադառնալուց յետոյ գերիներ գնելու։

Գենօվացիք գերի տղամարդկանց ծառայեցնում էին նաւերում ու դարձնում թիավարներ։ Սոսկալի տանջալից աշխատանք էր դա։ Գերի թիավարների գլխին կանգնած էր լինում նրանց հրամանատարը մտրակը ձեռին և ամենափոքր յոգնածութեան դէպքում շրխկացնում էր թիավարի մերկ մարմնին։ Եւ որպէս զի յուսահատութիւնից խեղճ գերիները չցատկեն, ջուրը չընկնեն, նրանց շղթաներով կապում էին նաւերին։

Գերիների գլխաւոր վաճառատեղիներն էին Կեօզլեվն ու Կաֆան, ուր ամեն կողմերից բերում էին գերեվաճառները իրանց կենդանի ապրանքները վաճառքի։ Ջոկում էին գեղեցիկ

և առողջ կանանց և առանձին թանգ գնով ծախում։ Դրանք մեծ մասամբ դառնում էին Կ. Պօլսի սուլթանների և փաշաների սարկուհիները*)։ Առողջ ու հուժկու տղամարդկանց գնում էին գենովացիները և հայերը՝ իրանց նաւերի և ծանր աշխատանքներ կատարելու համար։ Եւ այդ երկու կարգի կենդանի «ապրանքին» գնողները աւելի գին էին տալիս, քան ծեր, հիւանդ և վատառողջ գերիներին։

Սրտաճմլիկ տեսարան էր ներկայացնում այդ վաճառանոցը։ Գերի գեղեցիկ կանայք՝ զարդարուած և հագնուած՝ ըսպասում էին իրանց տէրերին։ Նրանք իրաւունք չունէին մօտենալու մի փոքր հեռուն լացող մանկանը, իրանց երեխաներին։ Գեղեցիկ սարկուհին իրաւունք չունէր զաւակ ունենալու։ Լաց, աղաղակ չորս բոլորը լսվում էին, որոնց երբեմն-երբեմն դադարեցնում էր գերեվաճառի շառաչող մտրակը...

Գենովացիների կօլօնիաների ամենածաղկած ժամանակն է ահա, որ անեցի հայերը Ախ-Սարայից գաղթում են Ղրիմ։ Քաղաքացիք սկսում են պարապել վաճառականութեամբ և արհեստներով, իսկ գիւղացիք՝ երկրագործութեամբ։

(Կը շարունակուի)

ՊԵՏՐՈՍ ԹՈՒՄԱՆԵԱՆ

---

*) Գերեվաճառութիւնը, գենովացիների հեռանալուց յետոյ Ղրիմից, դեռ երկար ժամանակ գոյութիւն ունէր Խեօզլեվում, որին վերջ տուեց ռուսաց կառավարութիւնը՝ Ղրիմը միացնելով Ռուսաստանի հետ։

# ՄԵՐ ԳՐՈՂՆԵՐԸ*)

## ԴԻՒՑԱԶՆԵՐԳՈՒՆԵՐ

### 4. ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ

Հայու սիրտ ունեցողը զգացեր է Հայրիկի քնարին քնքշութիւնը. իր վարպետն է հ. Արսէն Բագրատունի վարդապետին քերթողական երկասիրութիւնը։ Ինքնօգնութեամբ սորված է քերթողական արուեստի պահանջներն և ինքնաբուխ խանդովը կրցեր է իր մեղմիկ շունչովը երգել ու զգացնել անուշը և գորովականը։ Ի միջի շատ մը քերթուածներուն՝ պէտք յիշուի իր Հրաւիրակ Արարատեան դիւցազներգութիւնը, զոր գրաբար լեզուով գրած է։ Հ. Բագրատունի իր Մշակական-ի թարգմանութեամբ՝ հայկական տաղաչափութեան օրինակ կըլլար Հայրիկին։ Այդ դիւցազներգութեամբ՝ Հայրիկ հին Հայաստանի անցեալ փառքն ու բարքը կը նկարէ հայ մանուկներու աչաց առջև. կը դրուատէ Բագրատունի փառապանծ հարստութիւնը, կը դրուատէ Հայաստանի սուրբերը։ Ինքը ներշնչուած է Վիրգիլիոսէն, Արիստակէս Լաստիվերցիէն ու Նախանձելի ստրուկն է եղած Ներսէս Շնորհալիի քնարին։ Քերթողական մտքով զինքը կը համարի Հայաստանի արտասուքի ամանը։ Իր Վանգոյժը և Հայգոյժը կարելի է համարել արձակ դիւցազներգութիւններ։

***

### 5. ԲԱՂԴԱՍԱՐ Ս. ԽԱՉԱՏՈՒՐ

Մեր Դանտէն է ուզած ըլլալ իր Ատրիճե ընդարձակ դիւցազներգութեամբ, ուր կը կարծէ թէ Տելէմաքի շնորհաշուք

---

*) «Արօր» № 7—8.

բարոյականը շռայլած ըլլայ. ուզած է ըլլալ հայ Միլտօն մը, հայ Թասսօ մը։ Սիրային պատմութեան նիւթը օտար է, թատերաբեմը օտար երկրի մէջ է։ Բարոյախօս է։ Գրականօրէն տաղտկալի, բոլորովին անյաջող։ Պաշտպանած է կրօնքը։ Երբեմն քնար ի ձեռին կուզէ բանաստեղծել։ Բագրատունեան տաղաչափութեամբ գրած է. սակայն խեղճ է նաև տաղաչափութիւնը։ Չունի քերթողական խանդ, նկարչական պատկերներէ զուրկ է։

***

### 6. ԶԱՆԱԶԱՆ ԴԻՒՑԱԶՆԵՐԳՈՒՆԵՐ

Փոքր դիւցազներգուները կարելի է համարել Հ. Ալիշանի Պլպուլն Աւարայրի-ն, Մկրտիչ Աճէմեանի Վահագն-ը, Համբարձում Ալաճաճեանի Նեկտարինէ-ն։ Այս հեղինակներն ունին առանձին քերթուածներ, որոնց մասին վերջը կը խօսինք։

---

## Ք Ե Ր Թ Ո Ղ Ն Ե Ր

### 1. Հ. ՂԵՒՈՆԴ ԱԼԻՇԱՆ

Հայր Ալիշան իր քնարով հին ու նոր սերունդին հիացումն է. Հայաստանէն ներս միշտ թափառած է իր գրիչը. ու ամեն հայրունի բեկորի վրայ ցօղած է իր քնար մտքին զգացմունքի ու երգի հոգին։ Ժողովրդական անվիճելի համբաւ մըն է ունեցեր և զայն կը պարտի իր անկեղծ ազգասիրութեան։

Հ. Ալիշան սիրած է Օսիանի փափկանուշ քնարահար երկերը. կըսէր, որ ամենէն նախադասելի երկն է այն իր նախընտրած բանաստեղծութեանց մէջ։

Այդ փափկութիւնը, քաղցրութիւնը յայտնի է Յուշիկ-Ներուն և Հայաստանի Նշմարք-ներուն մէջ։ Հայրենասիրական քերթուածները կը կրեն Վենետիկի 1849-ի յեղափոխական շրջանին նոր երգերու հայրենագութ շեշտը։ Այդ թուականներուն գրած է իր յեղափոխական քերթուածներէն Աւագ ու Փոքր Մասիսի ընդվզող կրակոտ բանաստեղծութիւնը։ Իր վրայ ազդեր են եբրայական սաղմոսացութեան հոգերգու նուագները։ Հիւգօ և Լամարթին իր վրայ ազդեր են. սակայն ամենէն աւելի հե-

տեւած է Լամարտինի. ասոր բարոյական անուշ յորդորականները կը գործածէ. Հիւգոյի կրակոտ ու խարանող սրաբանութենէն կը զգուշանայ։ Լամարտին իր գեղանկարներուն մէջ ունի բարոյախօսի ինքնաբուխ քերթողական հմայք մը. Հ. Ալիշան նոյն հրապոյրը կը խտացնէ բառախաղերով. իր մանկական ու մաղթունի փոքր քերթուածներուն մէջ կը պակսի քերթողական խանդի զգլխիչ հոգին։ Վիպական դիւցազներգութիւն մըն է հայրունի երգերուն մէջ եղած Պլպուլն Աւարայրի-ն. դժբախտաբար հոն չեմ գտած վիպասանական կորով. պատկերները վեհութենէ զուրկ են. իսկ հոգեբանութիւնը մոգիչ։

Հայրենասէրի հոգին մեհենական նուսխայի պէս գուրգուրալի կը մնայ յիշատակին հետ։ Հայրունի նուագներուն հատորը թարգման կըլլայ իր բանաստեղծի խառնուածքին. Ժամանակակից ոեւէ բանաստեղծ իր տաղանդին հետ չի չափուիր։ Կիրքը իր մէջ խօսուն է, երգի ամբողջական հոգեզմայլ շեշտով կողջագուրէ մեր երեւակայութիւնը։ Եղեմի երգով դրախտի ծով անուշութիւնը կը հոսեցնէ։ Անոր մէջ արուեստի գեղեցկագիտական էջեր քանդակուած են։

Անկեղծ զգացմունքը ինքնին բանաստեղծութիւն է. Հ. Ալիշան այդ հոգեկան շնորհալի խանդը դնելով իր Յուշիկ-ներուն մէջ՝ ընդհանուր հայութեան ամենէն տաղանդաւոր քերթողն համարուեցաւ։ Հ. Ալիշան իր անկեղծ ազգասիրութեամբ մագնիսացուց ընթերցողները. Յուշիկ-ներու առաջին էջերուն մէջ կը յայտնէր սա ազգասիրական գաղափարները.

«Հայրենեաց հրեղէն հոսանքէն չհալող սիրտն՝ շատ ապառաժ շատ ապառում շատ այլանդակ և այլանիւթ պիտի ըլլայ... վա՜յ այդպիսի հրէշին. երկիր կու հալածէ զանիկայ, երկինք չի կրնար ընդունիլ սիրտ մը՝ որ այնքան կարծր գտնուած ըլլայ երկրի վրայ»։

Ըստ Հ. Ալիշանի՝ Հայաստան Աստուծոյ նուէր մը ունի, և այդ նուէրը Արարչին եղած առաջին նուէրը՝ Հայաստանի հայկական կաւն է, ուսկից Արարիչը կը շինէ մարդկութեան նախահայրը։ Զգիչ ոճ մը ունի Բագրեւանդայ կռիւն նկարագրութեան սա պարբերութեան մէջ.

«Ահաւասիկ հասաւ մեղրակաթն մայիս, գեղեցկագոյնն յերկոտասան հարազատս տարւոյ, գոնէ մեր հայրենեաց և անոր նման աշխարհի մէջ, ուր այս ամիս՝ հայադէր հայկադէր՝ մարբրի անուամբ հեզիկ նազիկ կու պարէ ի բլուրս և ի բարձունս, բոլորովին կանաչ ու դալարազգեստ. ձեռքըն ու ծոցն, գլուխն ու գօտին՝ փունջ փունջ, գոյն գոյն

ծաղկըներով լցուած, որք ի թեթև գարշապարաց կոխած տեղէն կարծես դուրս բղխին. արծաթալիք աղբերակունք կանչեն կրկջան. ծաղկափետուր թռչնիկք երգեն պարեն. թեթևթաթիկ ուլք և այծեմունք սահին սուրան. հոտաւէտ հովիկք և զով զեփիւռք ծոպ ծոպ ծամերնին ծածանեն, երբ հովտէ հովիտ ցածնալով բլրէ բլուր ցատքելով՝ անցնէ վազէ բամբիշն բարձանց հայոց՝ մրազարդն մարերի: Անոր շողակաթ շօգոլի շնչին՝ ծաղկըներն վառ վառ շողշողան. և եթէ ձայնն անուշիկ հասնէր ականջիդ... Ո՜հ երգն հայկածնին մարերեայ՝ հայոց հովասուն բարձանց վրայ, հազար տարիներ առաջ, երբ իր ազգն տէր ու ժառանգ էր բոլոր իր աստուածապարգև երկրին, այն ատենուան մրազարդ մարերեայ երգն այլ իրեն նման աննման էր. մեր նոր լսած երգերն՝ ինչպէս չոր տերև մը վարդի դիմաց՝ չէին կրնար կենալ...»:

Այս փոքր պարբերութիւնը բաւական է ցոյց տալու՝ որ Ալիշան ընդհանրապէս արձակին մէջ բառերու քնքշութեամբ է որ բանաստեղծական հոգի մը թափած է:

Իր քերթողի կորովը տաղաչափական գրութեանց մէջ զգալի է ըրած: Ամեն ընթերցողի հասակին յարմար գրաւիչ քնար մը ունի. հայ մանուկին հետ հրեշտակի քնարով կը խօսի, կորիճ երիտասարդին հետ՝ Մասիսի որոտումով. Մանկունի նուագներն զմայլելի են վանական օրհորդներու և պարմաններու համար. յեղափոխական հայ երիտասարդը անոր Հայբունի-ն ազգասիրութեան աւետարանը պիտի համարէ:

Բարձրանալու համար խոնարհութեան սանդուղը կը գործածէ.

Խոնարհութի՛ւն, ըզքեզ կանգնիմ ես
Յերկրէ յերկինս հասու ասպարէզ.
Ըզսէր գործեմ ինձ սանդղամատունս
Եւ վազվազեմ բեռնակ ի թիկունս:

Իր Խոհունի նուագները կրթիչ են, ատոնց մէջ ամենէն գրաւիչն է Խաղաղութեան ձայն հնչեցի քերթուածը: Յուզումներու անոյշ սափորը մեր շրթունքին կը դնէ իր Երգ հանգրուանաց քերթուածովը: Իր նուագներէն Տխրունի-ն, Տնօրինականք-ը, Կուսականք-ը, Տօնականք-ը կը յիշեցնեն Ներսէս Շնորհալիի հոգեզմայլ յափշտակութիւնը: Սուգի սահանքը կը հոսի սքանչելի քերթուած ի Գերսեմանի-էն. զայն կարդալուդ հանդիսատես կըլլաս տխրունի ողբերգութեան:

Հ. Ալիշան քնարի քաղցրութիւնը պահած է պատմական Ցուցիկ-ներու մէջ, աշխարհագրական Նշմարք-ներուն մէջ, ի-

*մաստասիրական* Ընդ եղեւնեաւ *հոգեզմայլ հատորին մէջ և համակ քնար սիրտ է իր հինգ հատոր բանաստեղծական Նուագներուն մէջ։*

***

## 2. ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆ ՄԿՐՏԻՉ

*Բանաստեղծի խառնուածքովը անփշրելի աստղ մը մնաց մեր գրական ամեն շրջաններու մէջ. յոռետես քննադատն այ պատկառեցաւ այս հոգիէն, որ ներդաշնակութեան խտացումն է։ Իրեն հետ ապրող Ջօհրապեան Մեսրոպ՝ վաղեմի դերասանը, հիմա աբեղայ Վենետիկի վանքին մէջ. կըսէր ինծի, որ Պէշիկթաշլեան ափ-յափոյ կը գրէր բանաստեղծութիւնները։ Օրթագիւղ մտերմական խօսակցութեան ատեն օր մը կըսեն իրեն, որ Ազնիւը այնքան կը սիրէր և ինչո՞ւ անոր վրայ բան մը չի գրեր. իսկոյն թուղթ ու կապարէ գրիչ մը կուզէ ու քուրջ մը թուղթի վրայ կը գրէ զգայացունց եղերերգն՝* Ո՞ւր ես, Ազնիւ։ *Միևնոյն Ջօհրապը ինձ կըսէր, թէ Պէշիկթաշլեան սիրային էպիզոտներ չունէր. բնաւորութիւնը սիրելի էր. հայ-կաթոլիկ բարձր դասակարգի աշակերտաց հայերէնի ու ֆրանսերէնի դաս կուտար։ Պէշիկթաշլեան Վենետիկի հայրերուն Պադուայի վարժարանին ամենէն գերապանծ աշակերտն է. իտալական փափուկ քնարով սնած ու բագրատունեան քնարերգու շրջանին տպաւորութեամբ մեծցած կը վերադառնար Պոլիս, ուր իր շուրջը կը համախմբէր համազգային գրասէր նոր ույժեր, որոնք հայ թատրոնի և հայ գրականութեան բարեշրջումի հիմնադիրները կըլլային։*

*Պէշիկթաշլեանի միամտութիւնը բանաստեղծ մտքերու յատուկ է. հ. Գէորգ Հիւրմիւզեան աբբահայր ընտրուելով, քնարաձայն կը հռչակէ որ Հայաստանի Ոգին ալ իր սուգէն կը կանգնի. ուրախ է Հայաստան։ Աշակերտական երախտագիտութեան զեղումն է այս։ Պէշիկթաշլեան Վենետիկի իր վարժապետ Մխիթարեաններուն անհուն գուրգուրանք ցոյց կուտար. Հիւրմիւզեան եղբայրները, Բագրատունին և Ալիշանը համահաւասար կը սիրէր ու կը պաշտէր։ Փոխադարձ էր սէրը։ Մոլեռանդ Մխիթարեան մը ըլլալը ցոյց տուած ու անմահացուցած է իր սա տողերով.*

*Մխիթարեանց եմք աշակերտ,*
*Վարժեալք նոցուն ի դաստակերտ.*
*Ձի՞ զմեզ առնես արդ դատափետ,*
*Է՛ Շէքեան դու վարդապետ։*

Այդ վարդապետը Մխիթարեանները հալածող Թթու Հասունեան մըն է եղած ազգատեաց, ազգային շահերուն դաւաճան։ Պէշիկթաշլեանի մէկ քանի քերթուածներն այն միջակ խանդը ցոյց կուտան, ինչ որ նկատուած է «Մխիթարեան տաղարան»-ներու մաղթունի, հայրունի և տխրունի քերթուածներուն մէջ. նմանաշունչ գրուածներ են բանաստեղծին այն երգերն, որոնք կը սկսին սա տողերով. Դժոխք ի մարտ, Վարդ մի զունեան, ի գրկաց գիրգ, Ո՛վ գերաքուիչ, Ո՛վ զի ճարտար է մահ, Եկու քընար, Բացան դրունք, Ո՛վ երջանիկ դու նըժդեհ, Ապողոնի որդիդ, և այլն։ Քնացած մանկան վրայ երգին մէջ սքանչելի են բանաստեղծական տողերուն սա քնքուշ պատկերները։

Ընդե՞ր երեսքըդ ժպտեցան.
Հրեշտակք եղեն քեզ յանդիման,
Որ յերազիդ քում ոսկեթել
Մօտին զայտերըդ համբուրել,
Ոմն զձիւնափայլ պարանոցիկդ,
Այլ ըղթաթիկըս քո փափկիկ...։

Անմեղ ու բնական սիրահարութիւններ ունեցած պիտի ըլլայ. թէև հակառակը կը պնդէր իրեն հետ ապրող անձ մը. սակայն Եփիմէ-ն ակնյայտնի ապացոյց մըն է, որ բանաստեղծը զգացած է սիրոյ կաշկանդող ոյժը. վկայ կը մնան սա տողերը.

Այն երեսէն հուր ելաւ,
Այն աչքերէն նետ թըռաւ.
Չեմ դիմանար բիւր ցաւոց.
Զանփորձ հասակս ծախէ բոց.
Ո՞վ զիս զարկաւ, թող զրուցեն—
Եփիմէն։

Իր երգած Ներեա՛ ինձ, կոյս-ը սիրատարփիկ ներշնչումներու մէկ հաւաստիքն է նոյնպէս։ Եւ վկայ սիրական խանդին՝ Ուստի յանկարծ ծագէ երգը։

Սողոմոն Կէզնէրի Դամոն եւ Դաֆնէ հովուերգական քաղցրութիւնը կը յիշեցնէ Պէշիկթաշլեանի Գնացէք, իմ տաղքը։ Յաջող և սքանչելի են Աշուն-ը, Առ զեփիւռն Ալեմտաղի, յԱլեմտաղին այն գեղեցիկ, Ո՞ւր էր թէ զեփիւռիկ, Ո՜հ ինչ անուշ, Յետին հառաչք. ասոնք գեղեցկագիտական ճաշակով գրուած հիասքանչ երգեր են. այդ քնարով ինքը կը յիշեցնէ տիեզերահռչակ քերթողներն Հիւգօ, Լամարթին, Բօդըլէր, Ալֆրէդ դը Միւսէ։

Տակաւ առ տակաւ կը լուսաբանուի և քննադատական տեսութիւններով կիմանանք, որ ինչ ինչ բանաստեղծութիւններ թարգմանութիւններ են, որոնք սակայն հեղինակութիւն կընդունուէին. Արփիար Արփիարեան Եգիպտոսի Շիրակ-ին մէջ 1905 թիւ 8 պրակով կը յայտնէր. «Գրասէր հայ լեզուագէտներու պարտականութիւնն է՝ մանրակրկիտ քննութեամբ փնտռել ժամանակակից հայ բանաստեղծութեանց աղբիւրները: Երբ մեր տոհմային գրականութիւնը Եւրոպայի և Ամերիկայի ծանօթացնելու կը հետամտինք, խայտառակութիւնը թող թեթև չհամարուի, եթէ ագիտաբար՝ անոնց ծախելու ելլենք ինչ որ իրենցմէ գնուած է: Պէշիկթաշլեանին Ո՛ւ փող զարկիցէք-ը անգլիերէն թարգմանութեամբ Ամերիկա հրատարակուեցաւ. շատ անդէպ աշխատանք մը. անգլիերէնէ հայացած բանաստեղծութիւն մըն էր, որ վերստին կանգլիանանար իբր հայկական ստեղծագործութիւն»: Արշակ Չօպանեան 1904-ին հրատարակելով բանաստեղծ Պէշիկթաշլեանի քերթուածները՝ չէր մոռնար յիշելու, որ թարգմանութիւն են կամ թարգմանաբար գրուած են բանաստեղծին մէկ քանի քերթուածներն, ինչպէս զորօրինակ Մինչդեռ յուսով-ը, Հայ քաջորդին (Հիւգօյի «Արևելականք»-ին Տղան բանաստեղծութեան նմանութեամբ), Թաղումն քաջորդւոյն (Ուօլֆ անգլ. բանաստեղծի նմանողութեամբ) և այլն:

Պատկերներուն մէջ, իղձերուն մէջ, հառաչանքներուն մէջ քնարին լարերը փափուկ կը հնչեն. իր տաղերուն կը հրամայէ որ պատկառելով սիրատարփիկ կոյսին մօտենան:

Եւ թէ անոյշ ձեզ ակնարկեաց,
Իբրև զերամ թռչնոց, յուշիկ
Դուք թառեցէք իր խոպոպեաց
Վերայ, ձեռաց և յուս փափկիկ:

Իր Աշուն-ը քերթողական նկարի ամենէն զգայնիկ, գերազանցօրէն գուրգուր ստեղծագործութիւնն է: Հայրենասէր երգերու մէջ ամբակոծ ջլապինդ կը դառնան քնարին լարերը: Հայրենիքի կրակով կը բռնկի ու կը բռնկցնէ: Սիրական քնարը հայրենասիրականին մէջ առիւծ կը դառնայ:

*
* *

### 3. ՏԷՄԻՐՃԻՊԱՇԵԱՆ ԵՂԻԱ

Քնարը սիրեց, ու գրական ամեն ճիւղի մէջ ուզեց սաւառնելով ապրիլ. կատարեալ մը չեղաւ ոևէ մասնաճիւղի մը

մէջ, սակայն իր մէջ անմահ կը մնայ գիտունի, բազմակողմանի վրասէրի անվիճելի յատկութիւնները։ Փափկասիրտ մարդն իր մէջ անուշ յիշատակով ապրեցաւ. շատ թշնամիներ ունեցաւ. արեմարի ատեն իր բարեկամները աւելի շատ էին. ու մեռնելէն վերջ, ինչպէս սովորական է, իր բարեկամները և իր վրայ հիացողները աւելի շատցան։

Տակաւին իր քերթուածներէն հատոր մը ձեռքս անցած չէ. ես իր քնարն ու գրականութիւնը ուսումնասիրելու համար՝ պրպտեցի իրեն ժամանակակից թերթերն ու հանդէսները, ուր լոյս տեսած էին իր գեղեցկագիտական գրութիւնները։

Ամէն զինքը ճանչցողները հաւաստեր են իր կուսակրօն կենցաղը, սիրոյ մէջ սակայն ըմբռնած է գերագոյն գաղափարական մը. ինքը սքանչացած է Նարինայի ձայնին, զոր եթէ լսէ՝ կը թողու գիրք, դրախտ ու տաճար։ Ունի ոտնաթուիկ թիթեռնիկ մը, անունը Ծաղկանոյշ, որուն յիշատակը անթառամ կը մնայ սա գողտրիկ տողերով.

Երէկ եկայ
Շուրթներուդ վրայ
Մեղր հաւաքել,
Այտերուդ վրայ
Սէր ճաշակել։

Անոր աչուըներուն ծովէն կը խմէ անմահարար նեկտար, սակայն կը յուսահատի, վասն զի նեկտարի տեղ արտասուք կը խմէ։ Սիրոյ մասին իմաստասիրական մտքով կը խորհի, կը հարցնէ։

Որ մեռանի սիրով, ո՞չ կեայ յաւիտեան։

Տէմիրճիպաշեանի ժամանակակից հիացողներէն էին Տիրան Նազարեան, դոկտ. Փէշտիմալճեան, Գարեգին Երամեան և Մինաս Չերազ. ասոնք ամենն ալ մէկ-մէկ նուէր կուտան Տէմիրճիպաշեանին, փոխարէն ինքն ալ իր երախտագիտութիւնը կը խտացնէ քերթուածի մը մէջ, ուր խեղճ քնարին մտքի հաւասարակշռութիւնը կը սկսի կաղալ.

Մըկրատ մ՚ ընտիր, սուր, ինձ նըւէր տըրուեցաւ,
Այլ չեմ կարող զայն գործածել գրչի պէս.
Գըգուէ գրիչս, իսկ հատանէ դա անցաւ.
Գըրիչս է կին, մըկրատս այր է յայտնապէս։
Գրիչս է կին ոսկեհեր, կէս հոլանի՛.
Զգայքս ու հոգիս համակ յուզէ հեշտաբար.
Եւ թըղթոյս վրայ՝ փոխանակ սև մելանի՝
Կաթէ նեկտար, մե՛ղր, և արտօս զովարար։

Կը շարունակէ այս քերթուածը, ուր կարելի է գտնել տարօրինակ գեղեցիկ մտքեր. խառնակութիւնը կը խանգարէ գեղեցկին ներդաշնակութիւնը։ Գրականութեան մէջ տարօրինակ տիպար մըն է եղած. գարշահոտ դիակը իրեն հիացումի նիւթ է.

*Ո՜հ, դիակաց սիրեմ բո՜յրն, և մանաւանդ տօթ յ'ամառ...*

Անոր մէջ կը գտնէ աստուածներու համադամ ու մեղր անո՜յշ։

Կը կարդաս Տէմիրճիպաշեանի յոռետես բանաստեղծութիւնները, դու ինքնին կը ցաւիս, թէ ինչո՜ւ այդ կորովի միտքը ջլատուած ու ջախջախուած է ողջմտութեան պակասութենէն. չես կրնար հասկնալ, թէ բանաստեղծը ի՞նչ նպատակով գրիչ է շարժած. կը տեսնես գեղեցիկ գաղափարներով վեր բարձրացող քնարագեղ շէնք մը, և այդ շէնքը Սամսոնի մը պէս ինքն իր վրայ կը կործանէ. պէտք է գիտնալ, որ բանաստեղծական ներքին մղումով մը Տէմիրճիպաշեան կը սիրէ մեռելները, կը սիրէ ողջերուն մահը, բնականաբար պիտի սիրէր իր գեղեցիկ քնարին անձնասպանութիւնը։ Ողջմտութեան պակասութեամբ, իր գեղեցիկ գաղափարներուն դաւաճանողը կըլլայ։

Գուցէ անհաւատալի երևի մեր գրութիւնը. Տէմիրճիպաշեանի հակասական խառնուածքին իբր ապացոյց կարձանագրեմ իր տխուր մէկ քերթուածէն սա տողերը.

*Երբ՝ գիշկընդխառն ի ցամաքն՝ ամուլ տեսնեմ սիրակաթ՝*
*Ոյք տան հրաժեշտ առ միմեանս, քանզի գընայ այրն հեռուն,*
*Ձերդ կինն եւ ես աղօթեմ զի․․ ծով՝ սահուն որպէս կաթ՝*
*Ուռի՜, պայթի՜, կըլլանէ՜ նաւն ընդ կոհակս երերուն,*
*Ո՛ ուղևորին կեանքն նետէ՜, հոն՝ աւազին վրայ, երկաթ...*

Իր այս յոռետեսութեան համար ժամանակակից քննադատներ՝ բնաւ չեն կրցած արդարացնել անոր ուղեղին հիւանդութիւնը։ Ա. Արփիարեան՝ խիստ կերպով խարազանած է անոր գրականութիւնը. իսկ դոքտ. Պօղոս Քօլօլեան՝ Տէմիրճիպաշեանի քսան տարուան գրականութեան մէջ կը գտնէ ցաւապարութիւն, անհեթեթութիւն, միջակութիւն և վտանգաւոր իմաստասիրութիւն։

Բայց սակայն Տէմիրճիպաշեանի անունը պատկառելի մընացեր է դասակարգ մը գրողներու շրջանակին մէջ։ Իր բազմակողմանի գրական յատկութիւններով բնականաբար նշանակութիւն մը պիտի ունենար թիւրքահայ գրականութեան մէջ։ Իր միակ պակասութիւնը ջղագարութիւնն է. հմտութեան կա-

րողութեան պաշարը անվրճելի ու նախանձելի է։

Տէմիրճիպաշեան ունի նաև յաջող քերթուածներ Եարգօ, ուր կը կարդանք Ֆրանսուա Կոպէի երկարապատում քերթուածներու քաղցրաբոյր հոգեբանութիւնը. սիրուն ու քնքուշ է Ապրիլ քերթուածը։ Խտացնելով մեր խօսքերը՝ կըսենք, որ Տէմիրճիպաշեան ընտրութեան մէջ կը պակսի, այսինքն կընտրէ նիւթեր, ուր խտիր չի դներ ընտիրին ու խեղճին միջև. կուզէ զանոնք դեղազարդել իր երևակայութեամբ, սակայն քիչ անգամ կը յաջողի։ Գրածին մէջ միևնոյն ատեն կը յեղաշրջէին նիւթ, ձև, գոյն և հոգի։ Ու անորոշ կը մնայ քերթողին նպատակը։ Երևակայութեան անհաւասարակշռութեան պատճառաւ՝ Գրիգոր Օտեանէն՝ անզգամ է կոչուած։ Խեղճը արժանի չէր այդ ածականին, ու ինքը միամտօրէն կըսէր. «Զիս անզգամ կանուանէ, քանզի... ժամանակին հետ կընթանամ»։ Լիտրէի, Հարտմանի, Բօդլէրի և Ռիշպէնի հետևելուն համար անզգամ է կոչուած. այսպէս կը մեկնէ ինքնին բանաստեղծը։

Սակայն խեղճ Տէմիրճիպաշեան չէր գիտեր, թէ իր անջեղլի վարդապետութիւնն որն է։ Բուդդայի մեծ համակիրն էր, Նիրվանայի գաղափարականին մէջ կընկղմէր և Յիսուսի հիացող մըն էր։

Ե.

# ՄԱԿԱԲՈՅԾԵՐ*)

## VII

13. Տուբերկուլօզի**) կամ Կօխի բացիլներ—Bacillus tuberculosus Koch—որոնք առաջացնում են զանազան օրգանների խլացաւ։ Տուբերկուլօզի բացիլները նման են բարակ ձողիկների, երբեմն էլ՝ հատիկների։

Իրանց աճման համար բացիլները կարիք են զգում 37° ջերմութեան և որոշ սննդարար նիւթերի։ Ճագարներին—lepus cuniculus—և ծովախոճկորներին արհեստական ճանապարհով վարակումը առաջացնում է նրանց մէջ նոյն ցաւը, որով հիւանդանում են մարդիկ։ Եղջիւրաւոր անասունների տուբերկուլօզի բացիլները շատ նման են մարդու տուբերկուլօզի բացիլներին. այդ պատճառով տուբերկուլօզով հիւանդ անասունները կարող են վարակել մարդկանց նոյն ցաւով։ Եղել են դէպքեր, երբ տուբերկուլօզով հիւանդի օրգաններում գտել են անասունների տուբերկուլօզի բացիլներ։

Տուբերկուլօզի բացիլները օրգանիզմի մէջ առաջացնում են խուլեր կամ հանգոյցներ—tuberculum—և այդ պատճառով հիւանդութիւնը կոչվում է տուբերկուլօզ, ուրեմն և խլացաւ։ Կամ զանազան դէպքերում բացիլները առաջացնում են էքսուդատիվ***) բնոյթ կրող երևոյթ։

Տուբերկուլօզի ժամանակ աճող խուլերը բաղկացած են լինում հիւսուածքից, որն իր կազմուածքով շատ նման է լի-

---

*) «Արօր» № 7—8.

**) Այս տերմինի տակ սովորաբար հասկացվում է «Թոքախտը». բայց միանգամայն սխալ է Թոքախտ տերմինը տուբերկուլօզի տեղ գործածել, որովհետև Թոքախտը տուբերկուլօզ կոչուող ցաւի մի այլ արտայայտութիւնն է այս կամ այն վտանգուած օրգանի վերաբերեալ. օրինակի համար՝ կայ պէս-պէս տուբերկուլօզ. ոսկրի, Թոքերի, արեան անօթների, ձուերի, կաշուի, սեռական գործարանների և այլն։

***) Հեղուկ, որը բորբոքման ժամանակ արեան անօթներից հոսում է բջապատի մէջ։

նում առողջացող վէրքերի մասին, ուստի և կոչվում է ինֆէկցիոն գրանուլիմ։

Նոյնպիսի բորբոքում և հանգոյցներ առաջացնում են սի-ֆիլիսի, ակտինոմիկօզի, բորի—lepra—բացիլները. սակայն այս վերջինների առաջացրած հիւանդութիւնները իրանց յե-տագայ փոփոխութիւններով բաւականին տարբերվում են տու-բերկուլօզից։

Տուբերկուլօզի բացիլների ներգործումը պայմանաւորվում է լէյկոցիտների և լիմֆոցիտների գաղթով արեան անօթներից վտանգուած հիւսուածքի շուրջը և մէջ։ Արեան և աւշային այդ գնդակները բոլորում են տուբերկուլօզի բացիլների շուրջը, կենտրոնի մէջ և, նրանց հետ միանալով, արագութեամբ առա-ջացնում են հանգոյցներ, որոնք ունենում են կորեակի չափ մեծութիւն, ուստի և կոչվում են միլիար հանգոյցներ (milium=կորեակի հատիկ)։ Այդ հանգոյցի մէջ չեն լինում արեան ա-նօթներ։ Այն հանգոյցները, որոնք կազմուած են լինում էպի-տէլիալ բջիջներից, կոչվում են էպիտէլիալ տուբերկուլներ կամ էպիտէլիալ հանգոյցներ և որոնք առաջանում են այն ժամա-նակ, երբ հիւանդութիւնը ընթանում է շատ դանդաղ (բարա-կայաւ)։

Լիմֆոիդ բջիջներ պարունակող հանգոյցները կոչվում են լիմֆոիդ հանգոյցներ, որոնք առաջանում են, երբ հիւանդու-թիւնը ընթանում է արագօրէն։

Նոր աճող հանգոյցները լինում են թափանցիկ, մուխ գոյնով, որոնք շուտով դեղնում են և դառնում անթափանց։ Դրա պատճառը կայանում է նրա մէջ, որ բացիլների թոյնը ներգործում է հանգոյցների բջիջներին, որոնք այդ եղանակով վերածնվում են և նմանվում մաճառակի։ Երբեմն մի շարք հանգոյցներ իրար միանալով կազմում են մի վիթխարի հան-գոյց, որը նման է լինում հաւի ձուին և կոչվում է սօլիտար կամ սալյուի հանգոյց։

Տուբերկուլօզի բացիլները ներս մտնելով օրգանիզմի մի խորշ՝ այդտեղից տարածվում են ամբողջ օրգանիզմի մէջ աւ-շային ապարատի, աղէկալ թաղանթի գեղձերի և արեան մի-ջոցով։ Սակայն տուբերկուլօզը միշտ այդպէս չէ տարածվում մարմնի մէջ. կան տուբերկուլօզի այնպիսի արտայայտութիւն-ներ, որոնք կոչվում են տեղական տուբերկուլօզ, երբ հիւան-դութեան պրոցեսը երկար ժամանակ մնում է մի տեղում, ինչ-պէս օրինակ՝ կաշուի տուբերկուլօզը, որին ասում են նաև գայ-լուկ (lupus), եղջիւրաւոր անասուններին յատուկ լանջաթա-

ղանթի—pleura—տուբերկուլօզը, որի ժամանակ հանգոյցները ներծծվում են ֆիբրինօզ (թելոտ) վերածնման և վերափոխվում փայլուն և կարծր հանգոյցների, ուստի այս վերջին հիւանդութիւնը նաև կոչվում է մարգարտախտ։

**Տուբերկուլօզ ընկնելու պայմանները.**—*Տուբերկուլօզը յաճախ պատահող՝ մանաւանդ մեծ քաղաքներում՝ հիւանդութիւններից մէկն է։ Տուբերկուլօզ կարելի է ընկնել զանազան ճանապարհներով և բազմաթիւ այս ու այն պայմանների շնորհիւ։ Այդ չարիքին ամենից առաջ նպաստում է այն հանգամանքը, որ տուբերկուլօզի բացիլները շատ դիմացկուն են և երկար ժամանակ կենդանի են մնում չորութեան մէջ, նաև չեն ոչնչանում փտող նիւթերի մէջ։*

*Տուբերկուլօզով ամենից յաճախ բռնվում են թոքերը, որոնց մէջ բացիլները շնչվում են փոշեխառն օդի հետ. այդ դէպքում բացիլները սկզբում հաստատվում են թոքերի գագաթներում, ուր կամ աճում են և առաջացնում հանգոյցներ կամ՝ շնորհիւ օրգանիզմի ներքին ույժերի՝ ոչնչանում։ Բացի շնչառութեան ճանապարհով վարակումից՝ երբեմն բացիլները հաստատվում են օրգանիզմի մէջ աղիքների միջոցով, ուր առաջացնում են աւշային ապարատի (Պէյերեան գեղձերի) բորբոքում և վէրքեր։*

*Այստեղից պրոցեսն արդէն անցնում է աղէկալ թաղանթի գեղձերին։ Ստամոքսի միջոցով չի առաջանում վարակում, որովհետև ստամոքսի հիւթը չի նպաստում բացիլների աճմանը և նոյն իսկ ոչնչացնում է նրանց։*

*Աղիքների միջոցով վարակումն առաջանում է այն դէպքում, երբ գործածւող կաթի մէջ լինում են բացիլներ, մանաւանդ երբ անասունի կուրծքը վարակուած է լինում տուբերկուլօզով։ Հազուագիւտ դէպքերում վարակումն առաջանում է մարմնի վրայ եղած վիրաւոր տեղերի միջոցով, ինչպէս օրինակ հրէաների և մահմեդականների մէջ թլպատման դէպքը, երբ թլպատողը, պատահաբար տուբերկուլօզ ունենալով, աննկատելի կերպով վարակում է երեխային։ Եւ վերջապէս ամենքին յայտնի է, որ տուբերկուլօզը ժառանգաբար յաճախ անցնում է հիւանդ ծնողներից սաղմին։*

*14.* **Մակատուբերկուլօզի բացիլներ**—Bacillus pseudotuberculosus—*որոնք շատ նման են իսկական տուբերկուլօզի բացիլներին և պատահում են կովի կաթի, իւղի, թրիքի ու փտած խոտի մէջ։ Երբեմն նրանք գտնվում են հիւանդի վտանգուած և լայնացած շնչափողի նիւթի (մաղաս) մէջ։*

**15. Սիֆիլիսի կամ Շաուդինի սպիրոխետներ.**—*Շաուդինի կարծիքով՝ այդ միկրոբը պէտք է հաշուել ամենաստորին կենդանիների դասին՝ տրիպանազօմներին։ Նա ունի ոլորուն ձև և ընդունակ է արագօրէն շարժուելու։*

*Սիֆիլիսի ժամանակ օրգանիզմի մէջ առաջացող փոփոխութիւնները նախ կայանում են կոկորդի և այլ բորբոքումների մէջ, որոնք հիստոլօգիական տեսակէտից չեն ներկայացնում որոշ մի փոփոխութիւն։*

*Երբեմն սիֆիլիսը՝ տուբերկուլօզի պէս՝ արտայայտվում է հիւսուածքի բորբոքումով, որը նոյնպէս նման է լինում գրանուլեմի։*

*Այդպիսի գրանուլեմների թւում պէտք է հաշուել* **պինդ շանկրը**, *որը սիֆիլիսի վարակման առաջին փազան է և արտայայտվում է նրանով, որ հիւսուածքի և բորբոքուած նիւթի բջիջները ուժեղ կերպով միանում են իրար։ Աւշային ապարատն այդ դէպքում խիստ մասնակցութիւն է ունենում. արեան փոքրիկ անօթները հաստանում են և նրանց միջի շաղիկը միանում է։ Այդ վայրերում գտնվում են անագին քանակութեամբ սպիրոխէտներ։*

*Մի առ ժամանակից յետոյ պինդ շանկրը՝ այսպէս ասած՝ հալվում է և մասամբ վերափոխվում* **միացնող հիւսուածքի** (соединительная ткань)։ *Յետագայ շրջաններում սիֆիլիսի ընթացքը արտայայտվում է նրանով, որ առաջանում են ուռոյն հանգոյցներ, որոնք անուանվում են* **գումմա** *կամ* **սիֆիլօմա**։ *Գումմաները ունենում են կամ կորեակի մեծութիւն—երեխաների ժառանգական սիֆիլիսի դէպքում—կամ յաճախ ընկոյզի, նոյնիսկ հաւկիթի մեծութիւն։ Խոշոր գումմաները առաջանում են փոքրերի իրար հետ միանալուց։ Թարմ գումմաները լինում են մութ-վարդագոյն, իսկ վերածնուածները, հին գումմաները՝ ոսկորների վրայ՝ լինում են կակղացած և նօսրացած։ («Գումմա» խօսքը «գումմի» բառից է և նշանակում է սոսինձ)։ Վերածնուելով ներքին գործարանների մէջ, գումմաները ապա փոխվում են մաճառականման նիւթի։*

**16. Բորի կամ Հանզէնի բացիլներ (Bacillus leprae Hansen).**—*Բոր հիւանդութիւնը տարածուած է գլխաւորապէս Եակուտսկի շրջանում, Դօն գետի տարածութեան վրայ գտնուող վայրերում, Լիֆլիանդիայում և այլն։ Հիւանդութիւնն արտայայտվում է երկու ձևով. 1) կաշուի վրայ, ուր բացիլները, տե հաստատելով, առաջացնում են խոշոր հանգոյցներ, և 2) ջղերի մէջ, երբ հանգոյցները առաջանում են ոչ թէ կաշուի վրայ,*

*այլ ներվի (ջղի) ուղղութեամբ։ Բորի բացիլները թէև նման են տուբերկուլոզի բացիլներին, այնուամենայնիվ արհեստական ճանապարհով մինչև այժմ չէ աջողվել այդ ցաւը առաջացնել անասունների մեջ։*

*17.* Սապի բացիլներ—Bacillus mallei—*որոնք նման են տուբերկուլոզի բացիլներին և բաւականին դիմացկուն։ Թոքերի կամ չնչին ճեղքուածների միջոցով ներս մտնելով օրգանիզմի մեջ, միկրոբները առաջացնում են ժահրոտ հանգոյցներ. իսկ երբ բացիլները ընկնում են արիան մեջ, այդ դէպքում արդէն մահն անխուսափելի է լինում։*

*Սապով սովորաբար բռնվում են ձիերն ու աւանակները, որոնցից այդ հիւանդութիւնը կարող է անցնել և մարդուն, երբ նա հսկում և խնամում է իր անասուններին։*

*Այն ժամանակ, երբ անասունները երկար կարողանում են դիմանալ այդ ցաւին, մարդու համար նա մի չարաչար վտանգ է։ Երբ ծովախոճկորի փորի մեջ ներարկում են սապի ժահրը, ապա այդ անասունի ձուերի մեջ առաջանում է բորբոքում։*

*18.* Ասիական խոլերայի կամ ստորակէտաձեւ սպիրիլներ Կօխի—Kommabacillus s. spirillum cholerae *Koch*—*որոնք առաջացնում են ամենքին յայտնի խոլերա ցաւը, որն արտայայտվում է մարսողական գործարանի բորբոքումով, ջրառատ կաթնագոյն կղկղանքով, վիժումով, արեան թանձրութեամբ, երիկամունքների խանգարումով, մարմնի փայտանալով և այլն, որոնց հետևանքը լինում է մահ։*

*Սպիրիլները իրանց մարմնից արտադրում են թունաւոր նիւթեր, որոնց ներգործումով պայմանաւորվում է մարդուս մարմնի վարակումը։ Միկրոբները մարմնի մեջ գտնվում են աղիքներում, իսկ դուրսը՝ կղկղանքի մեջ։ Նրանք նման են կարճ և հաստ, ծուռ ցողիկների։ (Ստորակէտների նման)։*

## VIII

## *Ստորին կենդանական մակաբոյծներ*—Protozoa

*19.* Ջերմի պլազմօդիներ—Plasmodium malariae—*որոնք առաջացնում են ամենքին յայտնի ջերմ (դողացաւ) հիւանդութիւնը։ Արեան կարմիր գնդակներին ոչնչացնելով, մակաբոյծը մթերում է իր մեջ դեղին կամ մութ գոյն ունեցող հատիկներ*

—մելանին—որոնք երևի առաջանում է շնորհիւ կարմիր գնդակների ոչնչանալուն։ Մի առ ժամանակից յետոյ մակաբոյծի պրոտոպլազմը սկսվում է բաժանուել մի շարք կլոր կամ ձուաձև մարմինների — sporo — կամ merozoit-ների։ Սեգմինտների բաժանուելով, մելանին մնում է իր շուրջը շարուած սպորների մէջ, ապա վերջիններս բաժանվում են արեան կարմիր գնդակի մնացորդներից ու մտնում նոր, դեռ չվարակուած գնդակների մէջ։ Այդ շրջանը, այսինքն՝ երբ տեղի է ունենում սպորների բաժանումը՝ միաժամանակ սկսվում է ջերմի բռնելուն հետ։ Երբ պարազիտը բաժանվում է սպորների, առաջանում է վերոյիշեալ մելանին, որի մի մասը կլանում են լէյկոցիտները, միւս մասն էլ դարսվում է լեարդի և փայծաղի մէջ, և վերջինս ջերմի ժամանակ բաւականին մեծանում, փքվում է։

20. Հեշտոցի տրիխոմոնաս—Trichomonas vaginalis—որն ունի մէկ կամ երեք ժգուտներ մարմնի վերջերում. միկրոբը գտնվում է կանանց հեշտոցի (սեռական գործարանի սկիզբը) ժաղասի մէջ։

## IX

## Որդեր եւ ճիճուներ

21. Տափակ որդերի—Platodes—մարմինը տափակ է՝ յաճախ բաժանուած բազմաթիւ մասնիկների։ Նրանց մարմնի մէջ գտնվում է երկակի ջղային հանգոյց, որտեղից տարածվում են նեարդները։ Աղիքային խողովակը յաճախ բացակայում է և սննդառութիւնը կատարվում է մարմնի ամբողջ մակերևոյթով ծծելու շնորհիւ։ Կղկղանքներն արտահանելու համար որդերն ունեն նաև որոշ ապարատ, երբեմն էլ բարդ կազմուածքի սեռական գործարաններ։ Տափակ որդերը բաժանվում են երկու դասի. երիզանման և ծծողներ։

Ա. Երիզանման կամ ժապաւէնաձև—Cestodes—որդերը չունեն բերանի անցք, ոչ էլ աղիքային գործարան։ Նրանք բաղկացած են առանձին յօդերից կամ պրօգլօտիդներից, որոնք ծառայում են միայն կպչելու համար։ Որդի գլուխն ունի փոքրիկ բարձրութիւններ, միևնոյն է թէ ծծակներ։ Որդերի ձուերն ընկնելով մարմնի մէջ՝ հասունանում են այնտեղ, ուռչում և ստանում փամփուշտի ձև, ուր երբեմն անսեռ ճանապարհով ա-

առաջանում են նոր սերունդներ։ Այս վերջինները անասունի մսի հետ ներս ընկնելով մի ուրիշ կենդանու ստամոքս՝ զարգանում են այնտեղ և վերափոխվում ժապաւէնաձև որդերի։

22. Երիզորդ—Taenia solium—կամ խոզի սոլիտէր, որ ունի մինչև 3 մետր երկարութիւն։ Գլուխն ունի ծծակներ, նաև 25-ի չափ սպակաձև շարուած ճանկեր։ Որդի բարակիկ պարանոցից ներքև սկսվում են նրա մարմնի մասնիկները։

Զարգացած մասնիկների կողերում կայ սեռական անցք և ձուերով լի զուակատուն, որն ունի մօտ 10 կողմերի ճիւղաւորումներ։

Հասունացած ձուերն ունեն կլոր ձև և շրջապատուած են հաստ կեղևով։ Ձուերի մէջ լինում են ճանկերով զինուած սաղմեր։ Ձուն, ներս ընկնելով կենդանու ստամոքսը (երբեմն մարդու, իսկ յաճախ խոզի), ազատվում է կեղևից և սաղմն արդէն ազատ է համարվում։ Թողնելով աղիքային խողովակը, սաղմը ընկնում է զանազան գործարաններ, յաճախ մկանների ցանցաթաղանթը, ուր, փամփշտաձև ուռչելով, ստանում է սիսեռի մեծութիւն՝ լցուած սերօզային հեղուկով։ Այդ շրջանի մէջ մակաբոյծը կոչվում է ցիստիցերկ—systicercus cellulosae—կամ ֆիննա։

Երբեմն ցիստիցերկն ունենում է ոչ մի, այլ մի քանի փամփշտաձև փքուածներ յաճախ այն ժամանակ, երբ նա ընկնում է գլխի ուղեղի մէջ։ Ցիստիցերկը երկար ժամանակ անվնաս կարող է գոյութիւն ունենալ մարմնի մէջ։

23. Էխինոկոկեր կամ շան սոլիտէր—Taenia echinococcus—որոնք գտնվում են շների աղիքային գործարանում։ Մակաբոյծի ձուերը, ընկնելով մարդու ստամոքսը, ազատվում են իրանց թաղանթներից և անցնում զանազան գործարաններ, գլխաւորապէս լեարդի մէջ։

Էխինոկոկերը մարդու մարմնի մէջ առաջացնում են չարաչար վնասներ։ Հասնելով որոշ մեծութեան, նրանց փամփուշտները պատռվում են, որոնց միջի թոյնը—սաթաթթուն—և այլն թափվում է զանազան գործարանների մէջ, ինչպէս օրինակ թոքերի, լանջաթաղանթի և այլն, ու առաջացնում զանազան ծանր բորբոքումներ։ Յիշածս ցաւը տարածուած է լապլանդցիների մէջ, որոնց համար շներ ունենալը մի խիստ պահանջ է։

24. Ժապաւէնաձև լայն որդեր—Botriocephalus latus—որոնք ունեն 5 և աւել մետր երկարութիւն. սերմերը ունեն էլիպսօիդ ձև և գտնվում են կեղտոտ ջրի մէջ, որտեղից

անցնում են ձկների մարմինը: Մարդու մարմնի մէջ այդ սերմերը հասունանում են և փոխվում ժապաւէնաձև որդերի:

Բ. Ծծողները կամ—Trematodes—ճիճուները տափակ են, ձուաձև կամ տերևաձև: Նրանց աղիքային գործարանը չի բացվում, այսինքն կոյր է: Ճիճուի սերմերը, ընկնելով ջրի մէջ, ծածկվում են փոքրիկ թելիկներով, որոնց շնորհիւ սաղմը կպչում է գորտերին և ջրային այլ կենդանիների մարմիններին ու իր համար պատշաճ տեղ որոնում և այնտեղ մի շարք փոփոխութիւնների ենթարկվում:

25. Լեարդի դիստոմա—Distoma hepaticut—որն ունի տերևաձև կերպարանք՝ 28 միլիմետրից մինչև 12 միլիմետր լայնութեամբ: Մակաբոյծը պատահում է աղիքներում և լեարդի մէջ (ոչխարների): Մարդու լեարդի մէջ պատահած ժամանակ առաջացնում է լեղանցքների լայնացում և այլ խանգարումներ:

## X

Ճիճուները կամ կոյր որդերը—Annelides—ունեն երկար կլոր մարմին՝ յաճախ բաժանուած մասնիկների: Երբեմն նրանք ունեն ծծակներ և ճանկեր:

26. Ասկարիսները—Ascaris lumbricoides—ունեն կլոր ձև. Նրանց երկարութիւնն է 25—40 սանտիմետր, ունեն բերանի անցք, որը բաժանուած է լինում երեք պռօշի, իսկ պռօշների վրայ լինում են փոքրիկ ատամներ:

Ասկարիսները յաճախ պատահում են մարդու աղիքներում անհագին քանակութեամբ, այնպէս որ երբեմն փակում են աղիքի միջանցքը:

Երբեմն նրանք սողում են լեղանցքի մէջ և առաջացնում լեղիի կանգառում: Այդտեղից նրանք յաճախ անցնում են լեարդի մէջ, ուր, ձուեր հանելով, առաջացնում են այդ գործարանում ծանր բորբոքում:

27. Սրագլուխ ճիճուները—Oxyuris vermicularis—նոյնպէս ունեն կլոր մարմին. էգի երկարութիւնը լինում է մօտ 10 միլիմետր, իսկ արուի երկարութիւնը՝ 4 միլիմետր: Նրանց սերմերը նման են տերևի, բաւականին խոշոր և պատած են լինում թաղանթով:

Մակաբոյծն ապրում է հաստ, նաև ուղիղ աղիքներում. գիշերները նրանք երբեմն դուրս են սողում յետին անցքից և տնում կանանց հեշտոցը, իսկ աղջ մարդկանց՝ սեռական ան-

դամի մէջ։ Իրանց սողալով այդ մակաբոյծերն առաջացնում են քոր վերոյիշեալ անդամների վրայ և մէջ։ Այդ երևոյթի շնորհիւ դեռահասները յաճախ անուղղակի կերպով ենթարկվում են այն պէշ սովորութեանը, որին ասում են օնանիզմ։

Բացի թուածս մակաբոյծերից՝ բնութեան մէջ կան և շատ այլ էակներ, որոնց կեանքը պայմանաւորվում է օտար մարմինների վրայ սնուելով և ապրելով։

Ամենքին յայտնի է ոջիլը, փայտոջիլը (բաղլինջ), քոսի ոջիլը, լուն, մոծակը և զանազան ցեղի ճանճերը։ Նրանց վրայ կարիք չկայ խօսելու, որովհետև իւրաքանչիւրը մեզանից վաղուց տեսել, լսել և կարդացել է այդ էակների մասին։

ՎԱՀ. ՄԱՄԻԿՈՆԵԱՆ

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ

---

I. **Ռուսահայ կեանքի շուրջը.**—*Էջմիածնի ձախորդ և հակաժողովրդական որոշումները.—Սոփ և Էջմիածնի յարաբերութիւնների խնդիրը.—Կաթողիկոսական խնդիր և հօրիզօնականների խլուրդային գործունէութիւնը.—Մեր ազգային-կուլտուրական կրթական և բարեգործական հաստատութիւնները (Ներսիսեան դպրոց, Յովնանեան-Մարիամեան դպրոց, Գէորգեան ճեմարան, ծխական դպրոցներ, Կովկասի Հայոց Հրատարակչական Ընկ., Հայ Դրամատիկ. Ընկ., Կովկասի Հայոց Ուսուցչական Միութիւն, Կովկ. Հայոց. Բարեգ. Ընկ., Հայ Գիւղատնտ. և Տնայնագ. Ընկ.)։*

II. **Թիւրքահայ կեանքի շուրջը.**—*Կ. Պօլսի և Երուսաղէմի պատրիարքական կանդիդատներ.—Տարաձայնութիւններ ազգ. ժողովի մէջ.—Ազգային ժողովի օրակարգի գլխաւոր հարցերը.—Խնդիր Օրմանեանի.—Խնդիր գաւառական հարստահարութեանց.—Սովը Սասունում.—Սաղիմական խնդիր.—Կաթողիկոսական խնդիր.—Կիլիկիոյ կաթողիկ. խնդիր.—Գաւառները և առաջնորդները.—Դաշնակցականների գործունէութիւնը.—Մուշի դպրոցական խնդիրը.—Սանասարեան վարժարանի խնդիր.—Վանի ազգային գործերի վիճակը և Սարաճեան արքեպիսկոպոսը։*

III. **Պարսկահայ կեանքի շուրջը.**—*Այվազեան արքեպիսկոպոսի հարցը.—Պարսկահայերի վիճակը.—Թաւրիզի հայերը.—Կենտրոնական դպրոցը.—Գաւառների վիճակը.—Թաւրիզի առաջնորդարանը.—Կարապետ եպիսկոպոսը և դաշնակցականները։*

## I

## ՌՈՒՍԱՀԱՅ ԿԵԱՆՔ

*Հայկական կեանքի մեր վերջին տեսութիւնից յետոյ) «Արօր» № 5—6) անցել է 3 ամիս։ Այդ ժամանակամիջոցում թէև շատ ջուր հոսեց, բայց հայկական կեանքը մնաց գրեթէ լճացած մեր ռուսահայերիս մէջ և ոչ մի աչքի ընկնող երևոյթ չարտադրեց։ Էջմիածինը միայն իր մի քանի ձախորդ որոշումներով եկաւ ապացուցանելու, թէ տեղապահ Սուրէնեան արքեպիսկոպոսը և նրա այժմեան խորհրդականները բաւական տրամադրութիւն ունեն սահմանափակել ժողովրդական իրաւունքները և մի տեսակ պատուար ստեղծել հայոց եկեղեցուն պատկանող հա-*

տուածների միջև։ Ժողովրդապետական սկզբունքի և իրաւունքների խախտումն պէտք է համարել այն սահմանափակումը, որ արել է տեղապահը, թէ քահանաները չեն կարող ընտրել և ընտրուել պատուիրակ ծխականների կողմից։ Եթէ ընդունենք մինչև այժմ ճանաչուած այն սկզբունքը, թէ հայոց եկեղեցին կազմում է ինքն ժողովուրդը, որի մէջ մտնում են և հոգևորականները, թէ հայոց եկեղեցին չէ ճանաչում ուրոյն հոգևորական դաս և ուրոյն աշխարհական դաս, ապա քահանաներին զրկելը ընտրելու և ընտրուելու իրաւունքից՝ պէտք է ընդունենք սահմանափակումն և խախտումն ժողովրդական իրաւունքի։ Ամեն մի քահանայ, լինելով ծխական մի եկեղեցու՝ աշխարհականի նման, ունի նրան հաւասար իրաւունք՝ ձայն տալու, ընտրելու և ընտրուելու։ Եւ մենք մինչև այսօր ունեցել ենք բազմաթիւ օրինակներ, որ ծխականները ընտրել են պատուիրակ նաև քահանաներին։ Հետևաբար՝ որոշել, թէ ծխականները իրաւունք չունեն ընտրել քահանաներից պատուիրակ, դա նշանակում է դիտմամբ ստեղծել կաստաներ, դա նշանակում է բաժանել ժողովրդից հոգևորականութիւնը, որ միայն մի պաշտօնեայ է, կոչուած՝ ծառայելու ժողովրդին։

Ոչ նուազ ձախորդ է այն որոշումն, որ կայացրել են էջմիածնի սինօդը և տեղապահ Սուրէնեանը Ամերիկայի առաջնորդական խնդրի առիթով Կիլիկիայի կաթողիկոսութեան վերաբերմամբ։ Ամերիկայի հայութիւնը առաջնորդ է ընտրում Ադանայի նախկին առաջնորդ և Կիլիկիայի աթոռի միաբան Մուշեղ եպիսկոպոսին։ Եւ էջմիածինը, փոխանակ վաւերացնելու այդ ընտրութիւնը, մերժում է այն պատճառաբանութեամբ, թէ Ամերիկան, լինելով էջմիածնի վիճակ, առաջնորդ չի կարող ընտրել Սսի միաբան հոգևորականին։ Ուրեմն՝ Սսի կամ Կիլիկիայի կաթողիկոսութեան և աթոռի մի հոգևորական չէ կարող իր եկեղեցական կոչումը կատարել Կիլիկիայից դուրս հայութեան մէջ։ Եւ ինքն ըստ ինքեան հարց է ծագում. ի՞նչ, մի՞թէ Կիլիկիայի հայոց եկեղեցին կամ կաթողիկոսութիւնը անբաժան մասն չէ հայոց առաքելական ընդհանրական եկեղեցու. մի՞թէ նա անջատ, բաժանեալ և ուրոյն եկեղեցի է կազմում, կամ հեստեալ է, հերձեալ։ Եւ Սահակ եպիսկոպոս Խապայեան, որ էջմիածնի միաբան էր, երբ ընտրուեց կաթողիկոս տանն Կիլիկիայի, մի՞թէ այլևս դադարեց հայոց եկեղեցու եպիսկոպոս և պաշտօնեայ լինելուց։

Մենք գիտենք, որ հանգուցեալ Գէորգ IV կաթողիկոսը գործեց մեծ սխալը՝ հրատարակելով Կիլիկիայի աթոռը հեստեալ

և հերձեալ։ Բայց Նրա յաջորդ Մակար կաթողիկոսը, որ համարվում էր մարմնացումն կղերական ոգու և ուղղութեան, իր առաջին հայրապետական ակտը շինեց այդ բաժանումը վերացնելը և հռչակելը Կիլիկիայի աթոռը՝ անբաժան մասն հայոց ընդհանրական եկեղեցու։ Սուրէնեան արքեպիսկոպոսից և Էջմիածնի այժմեան սինօդից մենք իրաւունք ունէինք աւելի մեծ ազատախոհութիւն ակնկալելու։ Նրանք շատ լաւ գիտեն, որ ահա մի քանի տարուց ի վեր ծագել է Կիլիկիայի աթոռի իրաւասութեան խնդիրը. նրանք քաջ գիտեն, որ Կիլիկիայի աթոռը չմասնակցեց վերջին կաթողիկոսական ընտրութեան, չը պէտք է մասնակցէ և այժմ, պահանջելով օր առաջ լուծել իր՝ իրաւասութեան սահմանների մասին յարուցած խնդիրը, որի մէջ մտնում է և իր արդար ու իրաւացի պահանջը, որ Կիլիկիայի աթոռի միաբան եկեղեցականները իրաւունք ունենան պաշտոնավարել էջմիածնական թեմերում։ Փոխանակ աշխատելու գալ որևէ իրաւախոհութեան, փոխանակ հասկանալու որ հայ ժողովուրդը պատմական անհրաժեշտութիւնից ստիպուած՝ պէտք ունի պահպանել Կիլիկիայի աթոռը և համարում է նրան անբաժան մասն հայոց եկեղեցու, Սուրէնեան սրբազանը և սինօդը մի նոր վիհ են բանում իրանց ձախորդ որոշումներով երկու աթոռների միջև։

Հանգուցեալ Ներսէս Վարժապետեանը նոյնպէս միաբան էր Սսի աթոռի, բայց այդ արգելք չեղաւ, որ նա դառնար Թիւրքիայի հայոց պատրիարք, կատարելով մի թեթև ձեռնադրութիւն, այն է՝ մտնելով Էջմիածնի միաբանների շարքը։ Այս ձեռնադրութեան կատարումը Էջմիածինը կարող էր պահանջել այժմ և Մուշեղ եպիսկոպոսից և ոչ վեր կենալ ու ասել, թէ որովհետև Ամերիկան «տէրունի» թեմ է, ուստի Սսի միաբան Մուշեղ եպիսկոպոսը չէ կարող առաջնորդ լինել։

Մեր կարծիքով, ամերիկահայերին մնում է՝ պատժելու համար Էջմիածնի այժմեան վարիչներին՝ հրատարակել Ամերիկան թեմ Կիլիկիայի և Սսի կաթողիկոսից ստանալ Մուշեղ եպիսկոպոսի առաջնորդական հաստատութիւնը։

***

Կաթողիկոսական հարցը, որքան մօտենում են ընտրութեան օրերը, աւելի և աւելի գրաւում է մամուլի էջերը։ «Մշակ» լրագիրը, ելակէտ ունենալով այն հանգամանքը, որ ներկայումս հրապարակի վրայ չկայ մի անպայման հեղինակաւոր և զօրեղ

դէմք, որ համախմբէր իր շուրջը հայ ժողովրդի բոլոր տարբեր հոսանքները և կարծիքները, լայն կերպով բացեց իր էջերը հաւանական ընտրելիների թեր և դէմ քննադատութեան համար։ Եւ նա դրանով հնարաւորութիւն տուեց թէ ազատամիտ-առաջադիմական, թէ պահպանողական կղերական և թէ նոյն իսկ ծայրայեղ հոսանքների և ուղղութիւնների ներկայացուցիչներին՝ ազատօրէն արտայայտել իրանց կարծիքները։ Եւ այդ հիման վրայ միևնոյն լրագրի էջերում լոյս տեսան շատ խիստ, նոյն իսկ կծու քննադատական, պարսաւական և պաշտպանողական յօդուածներ միևնոյն ընտրելիի մասին։ Մամուլի միւս օրգաններից «Հորիզոնը» պահում էր զաքարէական պապանձումն կաթողիկոսական հարցի մասին, իսկ «Սուրհանդակ», «Հովիտ» և «Լոյս» նոյնպէս զբաղվում էին այդ հարցով, թէև յաճախ միակողմանի կերպով, այսինքն նրանք աշխատում էին խօսել աւելի ի պաշտպանութիւն իրանց ընտրելիի, պարսաւելով հակառակորդներին, քան թոյլ տալով թեր և դէմ յօդուածների՝ ընտրելիների մասին։ «Հորիզոնը» բաւականացել էր միայն հանգուցեալ Ղ. Աղայեանցի բերանով յայտարարել, թէ «ուղտին աւելի հեշտ կը լինի մտնել ասեղի ծակով, քան Օրմանեանին՝ Էջմիածնի դռնով»։ «Հորիզոնը» նոյն իսկ չաշխատեց մաքրել իրան և վերջնականապէս հերքել մի ծանր ամբաստանութիւն, որ «Հովիտ» շաբաթաթերթի մէջ Գ. Ենգիբարեանը անքօղարկուած կերպով շպրտեց նրա երեսին, մեղադրելով նրան մի եպիսկոպոսից նպաստ ստանալու կեղտոտ վարմունքի մէջ։ Ոչ ոքի համար կասկածի տեղիք չմնաց, որ Գ. Ենգիբարեանը ակնարկում է «Հորիզոնին»։ Եւ ինչ արեց «Հորիզոնը» ցրելու համար այս վարկաբեկիչ ակնարկը հասարակական կարծիքի առաջ. ոչինչ, բացի մի չիրագործուած սպառնալիքից՝ Գ. Ենգիբարեանի հասցէին, թէ կը դիմի դատարանին։

Սակայն դէպքերը չյամեցին յայտնագործել «Հորիզոնի» զարմանալի լռութեան և Ղ. Աղայեանցի սպառնալիքի իսկական աստառը։ Հանգամանքները այնպէս դասաւորուեցին, որ «Արօրի» խմբագիր Հ. Առաքելեանը, գնալով Հռոմ, մասնակցելու համար խաղաղութեան համաշխարհային կոնգրէսին, կանգ է առնում Կ. Պոլսում և մի տեսակցութեան մէջ պատրիարքական տեղապահ Մանկունի սրբազանի հետ՝ իմանում է, որ վերջինս ստացած ունի Կովկասից մի ցուցակ «համբաւաւոր, վստահելի և միանգամայն անկուսակցական ու անկողմնապահ անձանց» ռուսահայերից, որոնցից պէտք է աշխատել ընտրել տալ կաթողիկոսական պատգամաւորներ Թիւրքիայի այն թեմերում, ո-

րոնք հնարաւորութիւն չեն ունենայ այս կամ այն պատճառով ընտրել և ուղարկել Էջմիածին իրանց միջից պատգամաւորներ Եւ կարդալով ցուցակը այդ անձանց, որոնք յանձնարարուած են իբրև անպայման կուսակիցներ Սուրէնեան արքեպիսկոպոսի թեկնածութեան (այս թեկնածութեան ջերմ պաշտպան է և սրբազան Մանկունին), Հ. Առաքելեան տեսնում է, որ այդ ցուցակը կազմուած է «Հօրիզոն» թերթի խմբագրութեան անդամներից, ծառայողներից և այնպիսի անձերից, որոնք համարուել են և համարվում են յարեալ այդ թերթին և որևէ կապ ունեն նրա հետ. մի խօսքով, ցուցակը կազմուած է գլխաւորապէս «հօրիզոնականներից»։ Եւ Մանկունի սրբազան, անկեղծօրէն համոզուած՝ որ ցուցակի մէջ յիշատակուած անձինք եթէ ընտրուեն պատգամաւորներ (արդէն երկուսն ընտրուել են. Յ. Քաջազնունի Վանի կողմից և Յ. Շաւարշ՝ Քղիի կողմից), անպայման իրանց ձայնը կը տան յօգուտ Սուրէնեան արքեպիսկոպոսի—որին նա, Մանկունին, համարում է միակ արժանաւոր և յարմար անձն կաթողիկոս լինելու ներկայ պայմաններում—մտադիր է եղել յանձնարարել Թիւրքահայ թեմերին ընտրել նրանց պատգամաւորներ։ Սակայն հէնց նոյն օրերը մի այլ մերկացումն է տեղի ունենում. գաւառներից նամակներ են ստացվում Կ. Պոլիս, որ մի խմբակցութիւն—որը թէև առ երես հրատարակել է, թէ ինքը չէ մասնակցում կաթողիկոսական ընտրութիւններին, որովհետև կաթ. հարցը նրա համար նշանակութիւն չունի — ոչ պաշտօնապէս աշխատում է իր կուսակիցների միջոցով աջողեցնել Մանկունի սրբազանին յանձնարարուած ցուցակի անձանց ընտրութիւնը, այն տարբերութեամբ սակայն, որ ընտրուածները պէտք է ձայն տային ոչ թէ յօգուտ Սուրէնեան արքեպիսկոպոսի, այլ յօգուտ Դուրեան արքեպիսկոպոսի և Խորէն եպիսկոպոս Մուրադբէգեանի։ Այս նոր մերկացումը ինքն ըստ ինքեան շատ բան է ասում...։ Մանկունի սրբազանի միջոցով աջողութիւն գտնելու համար, ցուցակ կազմողները նրան հաւատացրել են, թէ ձայն են տալու յօգուտ Սուրէնեան սրբազանի (որովհետև՝ այլապէս Մանկունի սրբազանը ոչ մի կերպով յանձն չէր առնի աջողեցնել ցուցակի անձանց ընտրութիւնը), իսկ տակից որոշել են ձայն տալ յօգուտ Դուրեանի և Մուրադբէգեանի։

Եւ սակայն «հօրիզոնականները», ի տես այդ մերկացումների, ստիպուեցին խզել իրանց լռութիւնը և խօսել կաթողիկոսական հարցի մասին։ Միևնոյն ժամանակ նրանք վայնասուն բարձրացրին, թէ իրանք ոչ մի տեղեկութիւն չունեն այդ

ցուցակից. նոյն իսկ որպէս թէ արդար զայրոյթով ընկուեցին, որ յանդգնել են առանց իրանց գիտութեան իրանց անունները մտցնել ցուցակի մէջ։ Բայց ո՞վ հաւատաց. ո՞վ հաւատաց Լէօների, Յովհ. Թումանեանների թափած այդ փարիսեցիական և կոկորդիլոսական արցունքներին։

Հաւատալո՞ւ բան է, որ կողմնակի մարդիկ յանդգնեն կազմել 40—50 անձանց մի ցուցակ, գրեթէ բացառապէս «Հորիզոն» թերթի խմբագրութեան անդամներից, աշխատակիցներից, ծառայողներից և կուսակիցներից, առանց յայտնելու այդ մասին նրանց։ «Հորիզոնը» մի՞թէ կարծում է, որ հայ հասարակութիւնը ապուշներից է բաղկացած այդպիսի սուտ և անհեթեթ չքմեղանքներ կուլ տալու համար։ Կամ Լէօն մի՞թէ չգիտէ, որ «այդ վաղ էր, ինչ էշը կաղ էր», որ անցան անդառնալի կերպով այն երանելի ժամանակները, երբ հայ հասարակութիւնը, կարծելով որ նա անկեղծ մշակական է, հաւատում էր նրա գրածներին։ Բայց այն օրից, երբ նա դէն ձգեց իր դիմակը, հագնելով ռենեգատութեան պատմուճանը, երբ նա դաւաճանեց «Մշակի» սկզբունքներին և մտաւ փարախը այն մարդկանց, որոնց դէմ նա կռւում էր տարիներ «Մշակի» էջերից, երբ նա սկսեց շպրտել «Մշակի» հասցէին այն խօսքերը և դարձուածները, որ «Նոր-Դարն» էր շպրտում մի ժամանակ, «Նոր-Դարը»՝ որի դէմ Լէօն կռիւ էր մղում, այն օրից մանաւանդ, երբ նա չամաչեց ցինիքաբար յայտարարել, թէ խարդախել և կեղծել է պատմական փաստերը, այդ օրից հասարակութիւնը հասկացաւ, թէ ում հետ գործ ունի։ Ամբողջ 8 ամիս «Հորիզոնը» լռութիւն էր պահում կաթողիկոսական խնդրի մասին։ Կարելի էր յարգել այդ լռութիւնը, եթէ նա անկեղծ լինէր. կարելի էր ենթադրել, որ լրագիրը առանձին նշանակութիւն չէ տալիս կաթողիկոսական խնդրին, ուստի և հարկ չէ համարում զբաղեցնել իր ընթերցողներին նրանով։ Բայց ոչ. բանից դուրս է գալիս, որ նա գործում է եղել, միայն ընտրել է խլուրդային ճանապարհը. նա կամենում է եղել խլուրդային ճանապարհով, գաղտագողի ապահովել նախ իր կանդիդատի ընտրութեան աջողութիւնը, ապա արդէն հրապարակ գալ։ Եւ հանգուցեալ Ղ. Աղայեանցի խօսքերը Օրմանեանի հասցէին ոչ այլ ինչ էին, եթէ ոչ դեռ յաղթութիւնը չտարած, կամ յաղթութեան մասին վստահ սնապարծի խօսքեր։

Այսուհետև նշանաւոր դարձած ցուցակի մերկացմամբ աւելի ևս սաստկանում է այն կասկածը կամ ամբաստանութիւնը, որ նետեց «Հորիզոնի» հասցէին Գ. Ենգիբարեանը, և որը «Հո-

րիզօնը» մինչև այսօր անգիտանալ է ձևացնում։

Գալով կաթողիկոսական ընտրելիների խնդրին, պէտք է ասել, որ այն ամենից, ինչ որ գրուեց թէ ռուսահայ և թէ Թիւրքահայ մամուլի օրգանների մէջ կաթողիկոսական հարցի մասին, յայտնվում է, որ իբրև յոյժ հաւանական ընտրելիներ առաջարկվում են՝ Սուրէնեան, Օրմանեան, Պարզեան արքեպիսկոպոսները, Կարապետ, Մեսրոպ եպիսկոպոսները, Բագրատ վարդապետը, իսկ իբրև սակաւ հաւանական ընտրելիներ առաջարկվում են Դուրեան, Մանկունի արքեպիսկոպոսները և Մուրադբէգեան ու Կիւլեսերեան եպիսկոպոսները։

Դասաւորելով ըստ հոսանքների և ուղղութիւնների, պէտք է ասել, որ Օրմանեան, Պարզեան, Մանկունի արքեպիսկոպոսները և Կիւլեսերեան ու Կարապետ եպիսկոպոսները առաջարկվում են աւելի՝ ազգային պահպանողական և կղերական հոսանքների կողմից. Դուրեան, Մեսրոպ և Մուրադբէգեան եպիսկոպոսները և Բագրատ վարդապետը՝ առաջադիմական և ազատամտական հոսանքների կողմից. իսկ Սուրէնեան սրբազանը՝ գլխաւորապէս Թիւրքիայի և Ռուսաստանի եկեղեցականութեան մի որոշ մասի կողմից։ Այս ընտրելիների արժանաւորութիւնների և թերութիւնների մասին աւելի քան շատ գրուեց, խօսուեց, և հայ հասարակութիւնը չէ կարող տրտունջ յայտնել, որ մամուլը չծանօթացրեց իրան՝ ընտրելիների յատկութիւնների հետ։

Արդ, այսօր, երբ մենք կանգնած ենք ընտրութիւնների շեմքին, հասել է ժամանակը յայտնելու, թէ այդ ընտրելիներից որի վրայ պէտք է կանգ առնել եթէ ոչ իբրև արժանաւորագոյնի, գոնէ իբրև յարմարագոյնի վրայ՝ հայկական իրականութեան ներկայ պայմանների մէջ։

«Արօրը» ևս, իբրև մամուլի մի օրգան, իր բարոյական պարտքն է համարում արտայայտել իր կարծիքը։ «Արօրը» թէև զուտ գրական օրգան, բայց և իբրև պարբերական հանդէս՝ դաւանում է այն սկզբունքները և ուղղութիւնը, որոնց արտայայտիչ է հանդիսացել հայ ժողովրդի մէջ «Մշակ» լրագիրը իր 40-ամեայ գոյութեան ընթացքում։ Այդ ուղղութիւնը, ինչպէս գիտենք, ազգային-առաջադիմական-դեմօկրատիական է։

Նայելով այդ տեսակէտից՝ առաջարկուած ընտրելիների վրայ, «Արօրը» աւելի յարմար և պատշաճ պէտք է նկատէր Բագրատ վարդապետի և նոյն իսկ Մեսրոպ եպիսկոպոսի ու Դուրեան արքեպիսկոպոսի ընտրութիւնը ի գահ կաթողիկոսութեան ամենայն հայոց և պէտք է աշխատէր այդ եկեղեցական-

ների ընտրութեան համար։ Սակայն, ի նկատի ունենալով որ նրանց ընտրութեան համար հանգամանքները բարեյաջող և նպաստաւոր չեն, քանի որ Բագրատի ընտրութիւնը՝ իբրև վարդապետի՝ հանդիպում է խոչընդոտի և առարկութիւնների, քանի որ Դուրեանի ընտրութեանը հակառակ են Թիւրքիայի հայութեան սահմանադիր-ռամկավար խաւերը և այդ եկեղեցականը իր պատրիարքութեան կարճատև շրջանում չկարողացաւ դիմադրել ծայրայեղ և խուժանապետական տարրերի ոտնձգութիւններին և չունի վարչական ձիրք, քանի որ Մեսրոպ եպիսկոպոսը, նոյնպէս որոշ հանգամանքների և դէպքերի շնորհիւ, չկարողացաւ ձեռք բերել ժողովրդականութիւն և բաւականաչափ հեղինակաւոր դիրք և համարումն" կաթողիկոսութեան պէս բարձր պաշտօնի համար, հետևաբար, չունենալով այլ ևս ուրիշ անձնաւորութիւններ, մենք ստիպուած ենք, ի հարկէ, մեր նայուածքը դարձնել այն ընտրելիների վրայ, որ առաջ են քշում մեզանից տարբեր հոսանքները և ուղղութիւնները։ Այդ պարագայում մեզ համար դժուար չէ յայտարարել, որ մեզանից տարբեր բանակների առաջ քշած կանդիդատների մէջ—Օրմանեան, Սուրէնեան, Պարզեան, Կարապետ, Կիւլեսերեան և Մուրադբէգեան — յարմարագոյնը և ամենահեղինակաւորը Օրմանեան արքեպիսկոպոսն է իր անցեալով, իր ունեցած կրթութեամբ և քաղաքագիտական հմտութեամբ։ Հետևաբար, առանց մեր ընտրելին լինելու, մենք ստիպուած ենք հաշտուել Օրմանեան արքեպիսկոպոսի ընտրութեան հետ" իբրև կոմպրոմիսի, որովհետև վերջ ի վերջոյ պէտք է ընտրել կաթողիկոս և ձեռնպահ մնալը այդպիսի մի հարցում միանգամայն անհնարին և անպատմական մի ակտ կը լինէր մեր կողմից։

Ուրեմն՝ քանի որ մեր ընտրելիք Բագրատ վարդապետի ընտրութիւնը ձևական պատճառներով անհնարին է դառնում, և մեզ մնում է համաձայնել կամայ թէ ակամայ, որ կաթողիկոս ընտրուի մեր հակառակ բանակների առաջ մղած կանդիդատներից, մենք ասում ենք, որ այդ կանդիդատների մէջ ամենայարմարագոյնը Մաղաքիա արքեպիսկոպոս Օրմանեանն է։

Իր բոլոր բացասական կողմերով հանդերձ, բայց և իր բոլոր արժանիքներով։

***

Մեր ազգային կրթական-կուլտուրական և բարեգործական հաստատութիւնները վերսկսեցին իրանց գործունէութիւնը ամարային հագստութիւնից յետոյ։ Ներսիսեան դպրոցը, որ շուտով կը տեղափոխուի իր նորակառոյց հոյակապ շինութիւնը, գործում է նոյն հոգաբարձութեան և տեսչի ղեկավարութեամբ, ուսուցչական մարմնի մէջ մասնակի փոփոխութիւններ մտցնելուց յետոյ։ Հոգաբարձութիւնը ձեռնարկել է դպրոցապատկան խարխուլ և քայքայուած շէնքերի տեղ նոր շինութիւններ կառուցանելու, որոնք, անշուշտ, կաւելացնեն դպրոցի եկամուտները։ Դպրոցից հեռացած լինելով, գլխաւորապէս ուսուցչական կազմից իրանց կոչման անհամապատասխան մի քանի անձինք, պէտք է յուսալ, որ ուսման ուղղութիւնը կընթանայ ազգային-առաջադիմական առողջ ու ուղղամիտ ոգով, և Ներսիսեան դպրոցը կը կարողանայ տալ ազգին առաջուայ նըման մանկավարժներ և ուսուցիչներ, կրթուած հոգևորականներ և հասարակութեան պիտանի անդամներ։ Վերջին տարիների ցնցումները, որոնք ընդհատեցին նրա կանոնաւոր ընթացքը, յոյս ունենք՝ այլ ևս չեն կրկնուի, քանի որ չարութեան խմորները մեծ մասամբ վերացուած են։

Յովնանեան օրիորդական դպրոցն ևս ըստ առաջնոյն շարունակում է իր խաղաղ և անդորր կեանքը, ազատուած լինելով նոյնպէս չարութեան որոմներից, աշխատելով պատրաստել հայ հասարակութեան համար օգտակար և կրթեալ մայրեր ու վարժուհիներ։

Էջմիածնի ճեմարանն ևս հետզհետէ մտնում է նիւթական և բարոյական բարեկարգութեան մէջ, և վերատեսուչ Բագրատ վարդապետի խոհեմ ու աչալուրջ կառավարութեամբ յոյս կայ, որ մեր ազգային այդ միակ բարձր կրթական հաստատութիւնը կարողանայ կանգնել իր կոչման բարձրութեան վրայ։

Ցաւով պէտք է արձանագրել սակայն, որ տարրական կրթութեան գործը կամ մեր ծխական դպրոցների վիճակը շատ հեռու է բարեկարգութիւնից։ Ծխական դպրոցներ շատ քիչ են բացվում. եղածները ևս չեն դրուած հաստատ, կայուն հողի վրայ. չունենք փորձուած, հմուտ, անձնուէր ուսուցիչների մեծ կոնտինգենտ։ Կան նոյն իսկ թեմեր, օրինակ՝ Ղարաբաղի թեմը, ուր շատ քիչ ծխական դպրոցներ կան։ Այդ թերութիւնների գլխաւոր պատճառներից մինը, բացի նիւթական պակա-

սութիւնից, կայանում է և նրանում, որ գործին գլուխ չեն կանգնած ձեռնահաս անձինք։ Թիֆլիսի և Երևանի թեմի համար թեմական տեսուչների պաշտօնի են կոչուած, մեր կարծիքով, անձեռնահաս և անհամապատասխան անձինք, որոնք մինչ այդ վարած իրանց պաշտօններում ցոյց տուած լինելով նեղ, աններողամիտ և թայֆայական ոգի, ուղղութիւն՝ չեն կարող ղեկավարել ժողովրդական կրթութեան պէս մի նուիրական, լայն ազատախոհութիւն և շիտակութիւն պահանջող գործը։

Անցնելով այժմ կուլտուրական և բարեգործական հաստատութիւններին, պէտք է ասենք, որ Կովկասի Հայոց Հրատարակչական Ընկերութեան անգործունէութիւնը և մեռելութեան հասած դրութիւնը կարելի էր հէնց սկզբից գուշակել։ Այն հանգամանքը, որ սկզբից գործին գլուխ կանգնեց Ս. Լիսիցեանը, յայտնի՝ իբրև նեղսիրտ, նեղոգի և կուսակցական ձգտումներով տոգորուած անձն, մանաւանդ սիրահարուած իր անձի և իր մեծութեան վրայ, որ այդ Ընկերութեան ղեկը իրանց ձեռքն աշխատեցին ձգել նեղ թայֆայական ոգով համակուած անձինք, որոնք ամենից առաջ՝ փոխանակ համեստ և լուռ գործունէութեան դիմելու՝ սկսեցին «Հորիզոնի» էջերից պախարակել և քննադատել նախկին Հրատարակչական Ընկերութեան արդիւնաւէտ գործունէութիւնը, ցոյց տուեց հէնց սկզբից, որ գործը դրուած չէ լուրջ և լայն հիմունքների վրայ։ Այդ անձինք աշխատեցին ընտրութիւնների ժամանակ հեռացնել ասպարէզից փոքր ի շատէ «Հորիզոնին» մօտ չկանգնած անձանց, յայտարարել, որ միայն իրանք են գրողներ և իրանցից դուրս չկան հայ գրականութեան մէջ լուրջ աշխատողներ և մշակներ, ինչպէս նոյն ոգով և ուղղութեամբ գործեցին Ղ. Աղայեան, Յովհ. Թումանեան, Վ. Փափազեան, Աւ. Ահարոնեան իրանց դասագրքերով և ձեռնարկներով, որոնց մէջ վտարել էին հայ գրողների շարքից նոյն իսկ Գ. Արծրունուն, Ս. Նազարեանցին։ Եւ ըստ նրանց, մի Ալ. Քալանթար, որ գործել է ամբողջ 40 տարի հայ գրականութեան մէջ թէ իբրև հրապարակախօս, թէ իբրև երգիծաբան (Վրձին) և թէ իբրև հեղինակ նարօդնիկական (ժողովրդասիրական) ոգով գրուած վէպիկների (Նամալեան), կամ մի Հ. Առաքելեան, որ նոյնպէս 40 տարի գործում է իբրև հրապարակախօս, իբրև վիպագրող (Շահրիար) և իբրև բանասէր, կամ մի Ս. Մալխասեան, որ նոյնպէս երկար տարիներ գործում է իբրև բանասէր և մատենագիր, կամ մի Առ. Սարուխան, որ նոյնպէս յայտնի է իբրև բանասէր և գրող, և այլք՝

*ամենևին հայ գրողներ չեն, բայց մի քանի անշնորհք կամ շօվէն ոտանաւորներ գրող համբակներ, թերունեբ և նոյն իսկ Յ. Ազաքաբեանի պէս գրականութեան մէջ մի բոլորովին անյայտ կամ սկսնակ անձնաւորութիւն՝ գրողներ, բանաստեղծներ և վիպասաններ են։ Որ ցերեկով, հրապարակօրէն այդ պարոնները թոյլ են տալիս իրանց կեղծիքներ (ֆալսիֆիկացիա) մտցնել գրականութեան մէջ, ունենալով այն միամիտ ենթադրութիւնը, թէ այդպիսի կեղծիքներով կարող են պատմութիւն ստեղծել, կարող են միայն իրանց ուզած և թայֆայական մարդկանց գրողներ հրատարակել տալ։*

*Եւ որովհետև Հրատարակչական Ընկերութեան ղեկավարները այդպիսի սկզբունքերով էին ղեկավարվում և միևնոյն ժամանակ ձգտում էին Ընկերութիւնը դարձնել իրանց կողմնակիցների համար շահագործութեան աղբիւր (Յովհ. Թումանեանը, որ չունի նոյն իսկ միջնակարգ ուսումն, կոչվում էր թարգմանելու Հոմերոսը), ուստի և նա դատապարտուած էր հիւծուել, մաշուել և դեռ կեանք չարտայայտած՝ մեռնել։*

*Ցանկանք, որ նոր անձինք մտնելով Ընկերութեան կազմի մէջ՝ նրանք կեանք և ոգի ներշնչեն, և նա, փոխանակ յոխորտ և սնապարծ ռեկլամների, ընդգրկէ համեստ և շիտակ գործունէութիւն։ Եւ տայ Աստուած, որ նոր Հրատարակ. Ընկերութիւնը կարողանայ ունենալ գոնէ նախկինի արդիւնաւէտ գործունէութեան մի մասը։*

*Առանձին գործունէութիւն ցոյց չէ տալիս և «Կովկասի Հայոց Դպրոցների Ուսուցիչների և Վարժուհիների Միութիւնը», մեր կարծիքով, այն պատճառով, որ գործին գլուխ չեն կանգնած ձեռնհաս անձինք։ Այդ Միութեան օրգան «Նոր-Դպրոցը», որ ամսաթերթից վերածուեց շաբաթաթերթի, բնաւ չէ համապատասխանում այն յատկութիւններին, որ պէտք է ունենայ մի օրինաւոր և գիտական մանկավարժական դպրոցական օրգան։ Պակաս չէ վնասում Միութեան զարգացմանը և այն հանգամանքը, որ նա զուրկ չէ թայֆայական ձգտումներից։*

*Գովել կարելի է համարել Հայ Դրամատիքական Ընկերութեան գործունէութիւնը։*

*Չնայելով որոշ աննպաստ պայմանների, նա կարողացաւ թատրոնական գործը փոքր ինչ ժողովրդականացնել հայ հասարակութեան մէջ։ Եւ եթէ Ընկերութեան վարչութիւնը աշխատէ կանգնել բոլորովին կօրրեկտ հողի վրայ, չտարուելով երբեմն կուսակցական նեղ ձգտումներով, նա, անկասկած, կա-*

րող է հետզհետէ գրաւել հասարակութեան համակրութիւնը և աջակցութիւնը։

Աւելի եռանդուն և, եթէ կամենում էք, որոտընդոստ գործունէութիւն է ցոյց տալիս Կ. Հ. Բարեգործական Ընկերութիւնը, չդաշուելով երբեմն նոյն իսկ ռէկլամային բնաւորութիւն ունեցող գործողութիւններից, մի հանգամանք, որ բացատրվում է, անշուշտ, Նախագահ Ս. Յարութիւնեանի փառասիրական ձգտումներով։ Բայց աւելի լաւ է փառասիրական ձգտումներ ունենալ և գործել, քան չգործել։

Ընկերութիւնը, ինչպէս յայտնի է, որոշել է տօնել իր գոյութեան 30-ամեակի յոբելեանը, որ պէտք է կատարուի առաջիկայ դեկտ. 18-ին։ Այդ նպատակով նա լոյս է ընծայել նոյն իսկ 30-ամեայ գործունէութեան տեղեկագիրը, որի մասին, ըստ էութեան, կը խօսենք ոչ այժմ։ Բայց նա որոշել է միևնոյն ժամանակ յաւերժացնել այդ յոբելեանը մի օգտակար ակտով, այն է՝ հիմնել մի ֆօնտ, կոչուած՝ «Դպրոցական Ուսուցչական», հայոց եկեղեցական ծխական դպրոցների ուսուցիչ-ուսուցչուհիներին օգնելու համար կենսաթոշակներով և նպաստներով, ինչպէս և օգնելու համար հայոց դպրոցներին։ Ընկերութիւնը իրաւունք է ստացել Կովկասի Փոխարքայից հանգանակութիւն կատարել փոխարքայութեան սահմաններում յօգուտ այդ ֆօնտի՝ մինչև այս տարուայ վերջը։

Անկասկած, սա մի բարի և նպատակայարմար ձեռնարկութիւն է, որի իրագործմանը պէտք է նպաստեն հայ ժողովրդի բոլոր խաւերը, որից պէտք է օգտուեն հայ ուսուցչութիւնը և հայ դպրոցը։ Եւ մենք մեր բարոյական պարտականութիւնն ենք համարում կոչ անել հայ հասարակութեանը՝ չխնայել իր լուման ձգելու բարի և գեղեցիկ գործի համար սահմանուած գանձանակի մէջ։

Արդիւնաւէտ և համակրելի գործունէութիւն ունի և Թիֆլիսի Հայ Գիւղատնտ. և Տնայնագործական Ընկերութիւնը, որ ուղղակի կապուած է ժողովրդի հետ, որովհետև և երկրագործ, գիւղացի ժողովրդին մեծ ծառայութիւններ է մատուցանում թէ իր դասընթացքներով, դասախօսութիւններով, փորձնական ձեռնարկութիւններով և թէ իր օրգան «Գիւղատնտես» թերթով, որ ծառայում է այժմ ուղեցոյց հայ երկրագործների համար։ Այդ Ընկերութիւնը մեծ ապագայ ունի. նա գործնականապէս մարմնացնում է հայ ժողովրդի մէջ այն ամենը, ինչ որ «Մշակը» քարոզում է տեսականապէս. և որովհետև այդ Ընկերութիւնը իսկապէս մշակական ոյժերի արդիւնք է, ուստի և նրա շուրջը

համախմբուած են իսկական ժողովրդասէր անձինք, որոնք նաև գործնականապէս կամենում են ծառայել հայ ժողովրդին և հայ գիւղացիութեանը։

---

Ա

## ԹՈՒՐՔԱՀԱՅ ԿԵԱՆՔ

Մինչև այսօր դեռ չէ լուծուել Թիւրքահայոց պատրիարքի ընտրութեան հարցը, և ազգային վարչութեան գլուխ է կանգնած դեռ ծերունի Վահրամ արքեպիսկոպոս Մանկունին, որ հետևում է հաշտարար քաղաքականութեան՝ ազգային ներքին գործերի և կուսակցութիւնների վերաբերմամբ, իսկ Հայաստանում կատարուող հարստահարութիւնների մասին Բ. Դռան հետ ունեցած բանակցութիւնների մէջ ցոյց է տալիս թէև կորբեկտ, բայց յամենայն դէպս պահանջկոտ, անյողդողդ և տոկուն գործելակերպ։ Սակայն Մանկունի սրբազան երկար ժամանակ չէ կարող պահել ազգային գործերի ղեկը իր ձեռքում իր հիւանդութեան պատճառով, ուստի և չէ կարող համարուել լուրջ կանդիդատ պատրիարքական գահի, որ դեռ մնում է թափուր, որովհետև ազգային երեսփոխանական ժողովի հատուածները չեն կարողանում որոշ համաձայնութեան գալ կանդիդատի մասին։

Թիւրքահայ եկեղեցականութիւնը բաղկացած է երկու մասից՝ հին և նոր գործողներից։ Առաջինների մէջ փոքր ի շատէ խոշոր, ծանօթ, գործունեայ, ազգային-եկեղեցական և հասարակական պաշտօնավարութեան բովից անցած դէմքեր ներկայանում են՝ Մանկունի, Օրմանեան, Դուրեան, Արշարունի, Յովակիմեան, Սարաճեան, Դիմաքսեան, Երէցեան, Յովհաննէսեան արքեպիսկոպոսները. իսկ նորերի մէջ, որոնք մեծ մասամբ դուրս են եկել Օրմանեանի և Դուրեանի ղեկավարած Արմաշի դպրեվանքից, աչքի են ընկնում Բաբգէն, Թորգոմ, Զաւէն, Սմբատ եպիսկոպոսները, որոնք այժմ վարում են առաջնորդական պաշտօններ։ Այդ հների մէջ պատրիարքական պաշտօնի համար յարմարագոյն նկատւում է միայն Արշարունին։ Բայց որովհետև նա սաստիկ հակադաշնակցական ուղղութիւն ունի,

ուստի դաշնակցական երեսփոխանները հակառակ են նրա ընտրութեանը։ Վերստին պատրիարքական պաշտօնին կանչել Օրմանեանին կամ Դուրեանին՝ անհնարին է։ Նորերի մէջ իբրև պատրիարքացու առաջարկվում են Բաբգէն, Թորգոմ և Սմբատ (Սաատէթեան) եպիսկոպոսները, բայց ազգային ժողովի կենտրոնի խմբակցութեան մէջ նրանց անունը առանձին հաւանութիւն չէ գտնում՝ իբրև տակաւին անփորձներ և չունեցող դիւանագիտական ու վարչական այն ձիրքերը, որոնցով պէտք է օժտուած լինի Կ. Պօլսի պատրիարքը։

Խնդիրը բարդվում է նրանով, որ Երուսաղէմի համար ևս պէտք է պատրիարք ընտրել, բայց դարձեալ չկայ մէջտեղ ձեռնհաս կանդիդատ։ Կան երեսփոխաններ, որոնք առաջարկում են ընտրել տալ կամ Օրմանեան և կամ Դուրեան արքեպիսկոպոսին։

Ազգային ժողովի երկու հատուածների—մեծամասնական կենտրոնի խմբակցութեան և փոքրամասնական «ազատական» խմբակցութեան—միջև եղած անհամաձայնութիւնը ընտրելիների վերաբերմամբ՝ յետաձգել է տալիս պատրիարքի ընտրութիւնը։ Եւ սակայն պատրիարքի ներկայութիւնը, իբրև ազգընտիր գլխի՝ ազգային վարչութեան, Թիւրքիայի կրած ներկայ ճգնաժամային օրերում աւելի քան անհրաժեշտ է։ Հաւանօրէն՝ ազգային ժողովը շուտով կը կատարէ այդ ընտրութիւնը, և, երևի, պատրիարք կընտրուի Արշարունի արքեպիսկոպոսը։

Կ. Պօլսի հայոց ազգային ժողովի օրակարգի մէջ կան մի քանի կարևոր խնդիրներ, որոնք մինչև այսօր լուծումն չեն գտնում։ Այդ անգործունէութեան գլխաւոր պատճառն այն է, որ, ըստ ներքին կանոնագրի, ազգային ժողովի նիստը միայն այն ժամանակ է օրինական, երբ ներկայ գտնուեն 71 երեսփոխաններ։ Ներկայումս երեսփոխանների թիւը, որ պէտք է լինի 140, հազիւ հասնում է 120-ի. մի քանիսը դեռ ընտրուած չեն, մի քանիսը ապրում են Եւրոպայում՝ առանց հրաժարուելու։ Լոգիքական կը լինէր, որ նիստը օրինական համարուէր, եթէ երեսփոխանների իրական թուի (120) կէսը ներկայ լինէր, բայց ժողովը կամենում է ղեկավարուել ներքին կանոնագրի բառացի պահանջով. և որովհետև շատ քիչ անգամ 71 երեսփոխաններ ներկայ են լինում, ուստի և ազգային ժողովի նիստը շատ քիչ անգամ է կայանում, և ժողովը, զբաղուելով միայն ատենական գործողութիւններով, չէ կարողանում որևէ որոշումն կայացնել։

Ազգային ժողովի օրակարգի մէջ կան մի քանի լուրջ և

կենսական նշանակութիւն ունեցող խնդիրներ, ինչպէս Հայաստանի մէջ կատարուող հարստահարութիւնների խնդիրը, հողային խնդիրը, կաթողիկոսական ընտրութեան խնդիրը, Երուսաղէմի խնդիրը, որ կոչվում է սովորաբար «Սաղիմական», Օրմանեան արքեպիսկոպոսի ամբաստանութեան խնդիրը, Կիլիկիայի կաթողիկոսի պահանջների և բողոքների խնդիրը, Սասունում տիրող սովի խնդիրը և այլն։ Այդ խնդիրների մէջ անմիջական լուծումն պահանջող և ժողովրդի համար կենսական նշանակութիւն ունեցողներն են Հայաստանի հարստահարութիւնների, հողային և Սասունի սովի խնդիրները, որոնք, սակայն, շատ բարդ խնդիրներ են, կնճռոտ, որովհետև նրանց լուծումը կախուած չէ ազգային ժողովից կամ վարչութիւնից, այլ Թիւրքաց կառավարութիւնից, որ, իր սովորութեան համաձայն, ամեն բան կարգադրում է միայն խոստումներով և ձգձգումներով։ Ճիշտ է, հողային խնդրի լուծումը շատ դժուար է, որովհետև մէջտեղ կան քիւրդերը, որոնք գրաւած լինելով հայերի հողերը հայկական ջարդերի ժամանակ կամ բռնի, կամ շատ չնչին գնով և տիրապետելով, մի քանի տարիներ, այսօր մերժում են վերադարձնել, համարելով իրանց սեփականութիւն, բայց Թիւրքաց կառավարութիւնը, եթէ ունենար բարի կամք, կարող էր վէճը վերջացնել իրաւախոհութեամբ, որոշ չափով վարձատրութիւն տալով քիւրդերին, իսկ բոլորովին ակնյայտնի գրաւումների դէպքերում՝ արդարադատութիւն գործ դնելով։ Դժբախտաբար՝ հէնց այդ բարի կամքն է, որ պակասում է կառավարութեան։ Միւս կողմից՝ հարստահարութիւնները, կեղեքումները հայաբնակ տեղերում, մանաւանդ հեռաւոր և խուլ անկիւններում, քիւրդերի և Թիւրք պաշտօնեաների ձեռքով՝ շարունակվում են անընդհատ, և գաւառական առաջնորդները ամեն օր բողոքներով, հեռագիրներով ռմբակոծում են պատրիարքարանը՝ դարման և օգնութիւն հայցելով։

Հայ ժողովրդի վիճակը անտանելի է դառնում և նրանով, որ մերթ ընդ մերթ, պարբերաբար լինում են ընդհանուր ջարդերի սպառնալիքներ։ Պատրիարքարանի բոլոր դիմումներին՝ օսմանեան կառավարութեան, վերջինս իր անգործունէութիւնը և կտրուկ միջոցների չդիմելու պատճառը բացատրում է նրանով, թէ չպէտք է գրգռել քիւրդերին, թէ տեղական պաշտօնեաների մեծամասնութիւնը բաղկացած է հին ռէժիմի մարդկանցից, թէ անհնարին է 2—3 տարուայ ընթացքում կերպարանափոխել ռէժիմը, թէ պէտք է համբերել և, վերջապէս, թէ առաջնորդների հաղորդած տեղեկութիւնները չափազանցուած

են, թէ քիւրդերի և թիւրքերի գրգռման պատճառը՝ դաշնակցականներն են իրանց յախուռն գործողութիւններով և այլն և այլն։

Տեսնելով որ պատրիարքարանի բազմադիմի թակրիրները, ուղղուած՝ կառավարութեանը, ոչ մի իրական հետևանք չեն ունենում և մնում են անուշադիր, ազգային ժողովը որոշել է դիմումն անել օսմանեան պարլամենտին և խնդիրը նրա քննութեանը ենթարկել։ Եւ մինչ նա մշակում էր մի առանձին և մանրամասն տեղեկագիր, վրայ հասաւ թիւրք-իտալական պատերազմը. այդ պարագայում անյարմար է նկատւում կատարել այժմ դիմումն, քանի որ ընդհանուր հայրենիքը վտանգի է ենթարկուած և դժուար թէ պարլամենտը լուրջ ուշադրութեան առնէ խնդիրը, կլանուած լինելով ամբողջովին պատերազմի և Թիւրքիայի գոյութեանն սպառնացող վտանգի խնդիրներով։

Եւ գուցէ պատերազմը աւելի իրական օգուտ բերէ Հայաստանի թշուառ ժողովրդին, քան բոլոր դիմումները, որովհետև օսմանեան կառավարութիւնը այժմ պէտք է խելամուտ լինի, որ ներքին և Ռուսաստանին սահմանակից գաւառների մէջ կատարուող հարստահարութիւնները, ջարդերը կարող են հրաւիրել պետութիւնների միջամտութիւնը, և արևելեան հարցը, ինչպէս և նրա մասն կազմող հայկական հարցը, կը վերաբացուի իր բոլոր լայնութեամբ...։

Շուտափոյթ լուծումն է պահանջում և «Սաղիմական» խնդիրը։ Ինչպէս գիտենք, Երուսաղէմի հայոց ս. Յակոբի վանքի միաբանութեան մէջ խոշոր անկարգութիւններ և զեղծումներ են երևան եկել, որոնք շարունակվում են տարիներից ի վեր։ Միաբանութիւնը բաժանուել է երկու հակառակ կուսակցութեան՝ Մաքսուտեան-Երէցեան, Երէցեան Գէորգ արքեպիսկոպոսի և Մաքսուտեան Ղևոնդ վարդապետի անունով, որոնք մեղադրվում են դրամական խոշոր զեղծումների և կողոպտումների մէջ, և հակա-Մաքսուտեան։ Երուսաղէմի աթոռը, ունենալով ազգային խոշոր հարստութիւն և կալուածներ, տուժում է այդ անկարգութիւններից։ Պատրիարք Յարութիւն Վեհապետեանը, իր զառամեալ հասակի պատճառով, անգիտակից դեր էր կատարել և գործիք էր դարձել զեղծարարների ձեռքում։ Թէև Կ. Պօլսի ազգային ժողովը մի քանի անգամ քննիչներ և պատուիրակներ ուղարկեց Էջմիածին, հեռացրեց Վեհապետեանին իր պաշտօնից և պատրիարքական տեղապահ նշանակեց Դանիէլ վարդապետին, որ յետոյ ձեռնադրուեց եպիսկոպոս և նոյն իսկ արքութիւն ստացաւ Իզմիրլեանից, բայց թէ քննիչները, թէ

պատուիրակներն և թէ տեղապահը, որը կարողացաւ վերջ տալ Սաղիմական խայտառակ և գայթակղալից խնդրին, չկարողացան գորդեան հանգոյցը լուծել, մինչև որ վախճանուեց Յարութիւն պատրիարքը և աւելացաւ մի նոր հոգս ևս, նոր պատրիարք ընտրելու հոգսը։ Ազգային ժողովը վերջին անգամ մի նոր պատուիրակ ուղարկեց, երեսփոխան Հայկ Խօճասարեանին, և յոյս կայ, որ այս անգամ վերջ կը տրուի այդ խնդրին, կընտրուի մի նոր պատրիարք և Երուսաղէմի աթոռը կը մտնի բարեկարգութեան շաւղի մէջ։

Փութով լուծելի խնդիրներից մինն է և Նախկին պատրիարք Օրմանեանի դէմ յարուցուած ամբաստանութիւնների խնդիրը և դատը, որ ահա 3 տարի է ձգձգվում է։ Քննիչ յանձնաժողովը արդէն աւարտել է իր քննութիւնը և իր տեղեկութիւնը յանձնել ազգ. ժողովին ի վերջնական տնօրէնութիւն։

Այժմ ազգային ժողովը իր օրակարգի առաջին հարց է նշանակել այդ խնդիրը, ստիպուելով մասամբ և այն բարոյական ճնշումից, որ գործեցին նրա վրայ Թիֆլիսից և Ռուսաստանի մի քանի այլ քաղաքներից ուղարկուած հանրագիրները՝ փութացնել դատի քննութիւնը։ Եւ, արդարև, ժամանակ է վերջ դնել այդ գործին, որ այնքան անպատուաբեր եղաւ հայութեան համար, մանաւանդ որ այժմ ապացուցուած է, որ Օրմանեանի դէմ խայտառակ սկանդալ սարքողները, նրան ամբաստանութեան տակ ձգելու ջանացողները եղել են Աւետիս Սուրէնեանը—մի վատահամբաւ և նախկին ազգային ժողովներից դաւաճանական գործերի համար վտարուած փաստաբան, որ Օրմանեանի օրով հետամուտ է եղել պաշտօնների, բայց չէ ստացել— և «սաղիմականները», այն է՝ Մաքսուտեան-Երէցեան խմբակը։ Հակառակ բոլոր ջանքերի Օրմանեանի հակառակորդների կողմից, քննիչ յանձնաժողովը անկարող է եղել որևէ յանցանքի մէջ դատապարտել նրան և գտել է միայն քննադատելի կէտեր։

Կաթողիկոսական հարցը դեռ մինչև այսօր ևս չէ կազմում ազգային ժողովի առանձին հոգածութեան առարկայ, թէև վաղուց ի վեր մտցուած է օրակարգի մէջ։ Այդ անտարբերութիւնը բացատրվում է նրանով, որ Թիւրքիայի հայ եկեղեցական դասի մէջ չգտնուելով ընդհանուր հեղինակութիւն և ժողովրդականութիւն վայելող անձն՝ Կ. Պոլսի հայ ղեկավար շրջանները եկել են այն եզրակացութեան, թէ պէտք է թոյլ տալ, որ այս անգամ կաթողիկոսն ընտրուի ռուսահայ եկեղեցական դասի միջից, մանաւանդ որ կաթողիկոսի գործունէութեան ասպարէզը ամենամեծ չափով պարփակվում է Ռուսաս-

տանի հայոց եկեղեցով։ Եւ մի անգամ ընդունելով, որ Թիւրքահայերը ուղղակի շահագրգռուած չեն այս անգամ կաթողիկոսական հարցի մէջ, թէ ազգային ժողովը և թէ Կ. Պոլսի հայ մամուլը մինչև սեպտեմբեր ամիսը գրեթէ մոռացութեան էին տուել կաթողիկոսութեան հարցը։ Իրերի այդ դրութիւնից օգտուեցին երկու խմբակցութիւններ. մինը, Ռուսաստանում, որ նպատակ է դրել իրան ընտրել տալ Սուրէնեան արքեպիսկոպոսին (խմբակցութիւն «Հօրիզօն» թերթի), միւսը՝ Դաշնակցութիւն կոչուած կուսակցութիւնը Թիւրքիայում՝ որ որոշել է ընտրել տալ Նախկին պատրիարք Դուրեան արքեպիսկոպոսին, որ դարձաւ զոհ այդ կուսակցութեան յախուռն և պարսաւելի գործունէութեան։ Այդ երկու կուսակցութիւնները սկսեցին գործել խլուրդային եղանակով, ամէն մէկը իր կանդիդատի օգտին։ Սեպտեմբերին սկսեց փոքր ինչ շարժուել և կաթողիկոսական հարցով հետաքրքրուել թէ մամուլը և թէ ազգային ժողովի կենտրոնի խմբակցութիւնը։ Թիւրքահայ մամուլի օրգաններից մին՝ «Բիւզանդիոնը», քննադատելով մինչև այսօր ռուսահայ մամուլի մէջ առաջարկուած կանդիդատներին, եկաւ այն եզրակացութեան, թէ յարմարագոյն ընտրելին՝ Կարապետ եպիսկոպոս Տէր-Մկրտչեանն է։ Մամուլի միւս օրգանները, «Ժամանակ» և «Արևելք», որոշ կանդիդատ չառաջարկեցին, բայց նրանք ևս յայտարարեցին, թէ Օրմանեան սրբազանի ընտրելիութիւնը անհնարին է։ Նոյնը յայտնեց և «Ազատամարտը», Դաշնակցութեան օրգանը, այնպէս որ բոլոր 4 լրագիրները համաձայն են մի կէտում, այն, որ Օրմանեանին չը պէտք է ընտրել։ Բայց և բացի «Ազատամարտից»՝ միւսները Դուրեանին ևս համարում են անհամապատասխան։

Թէ կաթողիկոսական գահի համար ինչ ընտրելիներ կառաջարկէ ազգային երեսփոխանական ժողովը, այդ մենք շուտով կիմանանք։ Յամենայն դէպս՝ պարզ է, որ Թիւրքահայերի համար ներկայ կաթողիկոսական ընտրութիւնը ներկայանում է մի երկրորդական հարց, որով նրանք զբաղվում են ոչ թէ սրտով, այլ, պարզապէս, մի «ազգային պարտականութիւն կատարած ըլլալու համար»։ Եւ հաւանական է, որ Թիւրքահայ թեմերից շատերը, փոխանակ տեղացի պատգամաւորներ ընտրելու, կընտրեն ռուսահայերից, ինչպէս արդէն մի երկու թեմերից ընտրել են։

Այս անգամ ևս, ինչպէս և Իզմիրլեանի ընտրութեան օրով, Կիլիկիայի կաթողիկոսութիւնը կամ աթոռը չպէտք է մասնակցէ ամենայն հայոց կաթողիկոսի ընտրութեան։ Այն օրից,

երբ Սահակ արքեպիսկոպոս Խապայեանը ընտրուեց կաթողիկոս, նա յարուցեց Կիլիկիայի աթոռի իրաւասութեան մի հարց, որ տարիների ընթացքում չլուծուեց ոչ Օրմանեանի, ոչ Իզմիրլեանի և ոչ Դուրեանի պատրիարքութեան օրով։ Կիլիկիայի կաթողիկոսը դիմեց նաև Խրիմեան և Իզմիրլեան ընդհանրական հայրապետներին, բայց սրանք ևս անուշադիր թողեցին։ Եւ այդ պատճառով, մինչև յարուցուած խնդրի լուծումը, Կիլիկիայի աթոռը, ուրեմն կիլիկեցի ամբողջ հայ ժողովուրդը չէ մասնակցում ամենայն հայոց կաթողիկոսի ընտրութեանը։

Կիլիկիայի աթոռի յարուցած իրաւասութեան խնդրի մէջ կան լուրջ ուշադրութեան արժանի և յարգի պահանջներ, կան և երկրորդական կէտեր։ Այսպէս, օրինակ, պահանջ է դրվում, որ Կիլիկիայի աթոռի միաբանները, իբրև հայոց եկեղեցու պաշտօնեաներ, իրաւունք ունենան պաշտօնավարել Կ. Պոլսի (էջմիածնական) վիճակներում և այլ թեմերում, ընդհանուր օրէնքների հիման վրայ, և կիլիկեան եպիսկոպոսները հայոց եկեղեցու խորթ զաւակներ չհամարուեն։ Պահանջ է դրվում, որ Կիլիկիան մասնակցի ամենայն հայոց կաթողիկոսի ընտրութեանը ոչ թէ իբրև մի թեմ, 2 ձայնով (հոգևորական և աշխարհական), այլ իր ունեցած թեմերով և այդ թեմերի ձայներով։ Պահանջ է դրվում, որ Կիլիկիայի կաթողիկոսը եկեղեցական նուիրապետութեան մէջ յիշատակուի և նրան պարզ ու պատշաճ յարգանքը տրուի անմիջապէս ընդհանրական կաթողիկոսից յետոյ։

Պէտք է ընդունել, որ այս պահանջները իրաւացի են, և Կ. Պոլսի պատրիարքարանն ու էջմիածինը պէտք է գոհացումն տան։ Պէտք է ելակէտ ունենալ այն սկզբունքը, որ Կիլիկիայի կաթողիկոսութիւնը կամ աթոռը անբաժան մասն է հայոց եկեղեցու, և ոչ մի խտրութիւն չկայ նրա և նրա միաբանների վերաբերմամբ։

Գաւառներում ազգային գործերի դրութիւնն աւելի քան ողբալի է։ Թեմական առաջնորդները հետզհետէ հրաժարվում են, նոր ընտրուածները յանձն չեն առնում ստանձնել պաշտօն, որովհետև գաւառներում, մի կողմ թողած թիւրք և քիւրդ տարրերի կազմած բռնապետութիւնը, ստեղծուել է ազգային մի նոր բռնապետութիւն, յանձին հայ յեղափոխականների, գըլխաւորապէս, ի հարկէ, դաշնակցականների, որոնք հետամուտ են միջամտել առաջնորդական իրաւունքներին, իրանց ձեռքը ձգել ազգային գործերի վարչութիւնը, չէզոքացնել առաջնորդների գործունէութիւնը։ Այդ պարագայում՝ առաջնորդները կամ ստիպուած են լինում համակերպել կուսակցականներին և նը-

րանց ձեռքում գործիք դառնալ, կամ թողնել ասպարէզը և հեռանալ։ Եւ, որ ցաւալին է, երկու կողմերը զբաղուելով ներքին կռուով, ջլատելով իրար՝ անկարող են լինում որևէ արդիւնաւէտ, շինարար գործ տեսնել, և դրանից տուժում է, ի հարկէ, թշուառ ժողովուրդը։ Այդպիսի մի տխուր պատկեր է ներկայացնում Մուշի դրութիւնը։ Այդ նշանաւոր և հայաշատ թեմի առաջնորդ Ներսէս եպիսկոպոս Խարախանեանը սկզբից հաշտարար ոգով կամեցաւ ընթանալ և գործել դաշնակցականների հետ միասին, յանձնելով նրանց, յանձին Սիմէօն Զաւարեանի, թեմի ամբողջ կրթական գործի ղեկավարութիւնը։ Եւ Սիմէօն Զաւարեան, որ դաշնակցականների մէջ լուրջ մարդու ու ազգասէրի համբաւ ունի, վերջ ի վերջոյ գործերը հասցրեց այն դրութեան, որ առաջնորդը ստիպուեց հրաժարուել իր պաշտօնից և գնալ առանձնանալ Մուշի ս. Կարապետի վանքը, իսկ ինքը Ս. Զաւարեանն ևս, կրթական ընդհանուր տեսուչը, ըստիպուեց նոյնպէս հեռանալ և, գնալով Կ. Պօլիս, մաշել պատրիարքարանի շեմքերը իր գանգատներով առաջնորդի դէմ։ Առաջնորդը գանգատւում է, որ դաշնակցականները անդամալուծում են իր գործունէութիւնը, իսկ Ս. Զաւարեանը գանգատւում է, որ առաջնորդը որոշ նպատակով և դպրոցների անունով ստացուած գումարները գործադրում է առաջնորդարանի կարիքների համար։ Եւ այս ներքին, ազգակործան կռուի հետևանքն այն է լինում, որ Մուշի պէս Հայաստանի մի կարևոր երկիրը, պատմական Տարօնը, զուրկ է մնում դպրոցներից։

Ոչ նուազ վնասակար կերպով ազդում է և Էրզրումի Սանասարեան դպրոցի գոյութեան վրայ դաշնակցականների գործունէութիւնը։ Այդ դպրոցը ներկայումս ընկել է դաշնակցական մի խմբի ձեռք, և անբարեկարգութիւնը այնքան առաջ է գնացել, սաների բարոյական և մտաւոր կրթութեան գործը այնքան վտանգուած է, որ դպրոցի խնամակալութիւնը, որը գտնվում է Կ. Պօլսում և որի ատենապետն է Գաբրիէլ էֆէնդի Նորատունկեանը, լուրջ կերպով մտածում է տեղափոխել Սանասարեան վարժարանը մի այլ քաղաք, ինչպէս հաղորդում են Կ. Պօլսի հայ թերթերը։

Վանի ազգային գործերն ևս մեծապէս տուժում են դաշնակցականների գործունէութիւնից, շնորհիւ երկու տխրահռչակ անձանց՝ նախկին վարդապետ և կարգալոյծ եղած Տաճատի, այժմ Գարմէն անունով, և նոյնպէս նախկին վարդապետ Մաշտոց Փափազեանի։ Շնորհիւ յայտնի գործելակերպի, նրանց աջողուել է ապօրինաբար ձեռք ձգել ազգային գործերի վարչու-

թիւնը։ Եւ թէև տեղական ժողովը բողոքել է Կ. Պոլսի կենտրոնական վարչութեանը և պահանջել բեկանել ընտրութիւնը, բայց ժողովի բողոքը դեռ չէ յարգուած։ Մի րոպէ կարծւում էր, թէ նոր առաջնորդ Սարաճեան Յովսէփ արքեպիսկոպոսը կը կարողանայ դիմադրել կուսակցականների վնասակար գործունէութեանը, բայց, ինչպէս երևում է, նա, բաւականաչափ զօրեղ չզգալով իրան, կամենում է կոմպրոմիսների և հաշտարարութիւնների միջոցով մի կերպ չէզոքացնել կուսակցականների գործունէութիւնը։

Անշուշտ, հաշտարար և խաղաղասիրական ճանապարհը գովելի է. ձգտումը, որ գործիչների ոյժերը չվատնուեն ներքին, եղբայրասպան հակառակութիւնների և կռուի մէջ, գովելի է, մանաւանդ մի ժողովրդի մէջ, որ այնքան պէտք ունի զօրեղ ոյժերի. բայց ի նկատի ունենալով դաշնակցականների անհերքողամիտ, անհամբերող և ոխակալ ոգին, մենք կասկածում ենք, որ Սարաճեան արքեպիսկոպոսի ցանկութիւնը իրագործուի, ինչպէս չիրագործուեց Մարախեանեան եպիսկոպոսի ցանկութիւնը։

III

## ՊԱՐՍԿԱՀԱՅ ԿԵԱՆՔ

Պարսկաստանի հայերը այս րոպէիս հետաքրքրուած են գլխաւորապէս նրանով, թէ ինչով կը վերջանայ այն կռիւը, որ մղում են իրար դէմ նախկին-շահ Մահմէդ Ալին իր կուսակիցներով և սահմանադրական կառավարութիւնը։ Բնական է, այս կռուի ելքից շատ բան է կախուած հայերի համար։ Եթէ էքս-շահը յաղթական դուրս գար, երկիւղ էր կրւում, որ նա կարող էր վրէժ լուծել հայերից՝ սահմանադրականներին օգնած լինելու համար։ Այս առաջին։ Երկրորդ, Պարսկաստանի վաճառականութեան մէկ մասը գտնուելով հայերի ձեռքում, հայ տարրը չափազանց տուժում է ներկայ ներքին կռիւների և երկպառակութիւնների ժամանակ։ Տա՛յ Աստուած, որ սահմանադրականների յաղթութեամբ երկիրը մտնէր վերջապէս խաղաղ զարգացման շաւղի մէջ և հայերն էլ պարսիկների հետ միասին վերսկսէին իրանց կանոնաւոր կեանքը և զբաղմունքը։

Եւ որովհետեւ ժողովրդի առաջադիմութեան և զարգացման գլխաւոր գործօնը դպրոցն է, ուստի և պարսկահայերի գլխաւոր գործը պէտք է լինի դպրոցների բացումը։ Ցարաբախտաբար դպրոցական-կրթական գործը շատ անմխիթար վիճակի մէջ է. հայ ժողովուրդը Պարսկաստանում նիւթական կողմից նախանձելի չէ, որ կարողանայ նոր դպրոցներ բանալ. եղածներն էլ հետզհետէ փակվում են, ինչպէս փակուեցին Ատրպատականի թեմում Տ. Աֆրիկեանի նպաստներով պահուած դպրոցները։ Պարսկա-հնդկական թեմում առաջնորդ Այվազեան արքեպիսկոպոսը, ընդունուած լինելով խիստ կուսակցական դիրք, ատելի է դարձել ժողովրդի բանիմաց մասին. և որովհետեւ ինքն էլ չէ փայլում բարոյական և մտաւոր առանձին յատկութիւններով, ուստի և նրա պաշտօնավարութիւնը միանգամայն վնասակար է հանդիսանում թեմի ժողովրդի համար։ Դեռ հանգուցեալ Իզմիրլեան կաթողիկոսի օրով, ժողովուրդը բողոք բարձաւ, և կաթողիկոսը մտադիր էր հեռացնել Այվազեանին իր պաշտօնից, բայց մահը վրայ հասնելով՝ չկարողացաւ։ Այվազեան եպիսկոպոս իր անտակտ, անքաղաքագէտ վարմունքը հասցրեց այն աստիճանի, որ ռուսաց դեսպանատունն էլ ստիպուեց պահանջել նրա յետս կոչումը, և տեղապահ Սուրէնեան սրբազան, անտարակոյս, կը կարգադրէր նրա յետս կոչումը, եթէ նրան արգելք չլինէր այն հանգամանքը, որ Պարսկաստանի թեմակալ առաջնորդի յետս կոչումը կամ հաստատութիւնը միայն կաթողիկոսի պրերօգատիվն է։ Հետեւաբար, Այվազեանի վնասակար և ապիկար առաջնորդութեան հարցի լուծումը պէտք է մնայ մինչև նոր կաթողիկոսի ընտրութիւնը։

Աւելի բարեյաջող պայմանների մէջ չեն Ատրպատականի հայերը։ Այստեղ, Թաւրիզում, ինչպէս յայտնի է, առաջնորդարանին կից կայ թեմական ժողով և թեմական խորհուրդ, մի փոքրիկ նմանութիւն կամ, աւելի ճիշտն ասած, պարօդիա՝ Թիւրքահայոց ազգային երեսփոխանական ժողովի և ազգային վարչութեան։ Դժբախտաբար, շնորհիւ դաշնակցական յայտնի գործելակերպի, թեմական ժողովը և խորհուրդը գրեթէ բացառապէս բաղկացած են կուսակցականներից։ Ի հարկէ, ոչինչ չէր կարելի առարկել, եթէ ընտրեալ պատգամաւորները ժողովրդի ազատ կամքի արտայայտութեան արդիւնք լինէին. բայց հանրածանօթ իրողութիւն է, որ ներկայումս Ատրպատականի թեմում, մանաւանդ Սալմաստում, տիրում է դաշնակցական կատարեալ բռնապետութիւն, որը և ընտրել է տալիս՝ ում կամենում է, զրկելով ժողովրդին հնարաւորութիւնից ազատօրէն և խղճ-

մտօրէն արտայայտել իր կամքը և ընտրել իր ներկայացուցիչներին։ Այդպիսի պայմաններում, առաջնորդ Կարապետ եպիսկոպոսը, ի հարկէ, մի առանձին դեր խաղալ չէ կարող, դիմադրել կուսակցականների միասակար գործունէութեանը անզօր է, ուստի և սխալ է այն կարծիքը, որ սկսել է տիրել որոշ շըրջաններում և մանաւանդ կառավարական շրջաններում, թէ Կարապետ եպիսկոպոսը նպաստում է Դաշնակցութեան տարածմանը և գործունէութեանը։ Ճիշտն այն է, որ նա անզօր է դիմադրել այդ գործունէութեան, ուստի և հաշտարար, զիջող դիրք է բռնել։ Աւելի լաւ կը լինէր, ի հարկէ, որ նա այդպիսի հանգամանքներում հրաժարուէր։

Ցաւալի է մանաւանդ, որ Ատրպատականի միակ միջնակարգ դպրոցը՝ Կենտրոնական վարժարանը՝ նոյնպէս ընկել է դաշնակցականների ձեռքը։ Այդ հանգամանքը պատճառ է լինում, որ հայ հասարակութիւնը անվստահութեամբ է վերաբերվում դէպի այդ հաստատութիւնը և տրամադրութիւն չէ ցոյց տալիս աջակցելու նրան դրամական նպաստներով և նուէրներով։ Այդ դէպքում ևս Կենտրոնական վարժարանի հոգաբարձութիւնը սաստիկ մեղադրելի է, որ փոխանակ աշխատելու անկուսակցական դիրքի մէջ պահելու Կենտրոնական վարժարանը, նա իր ընտրութեամբ գունաւոր կուսակցական և թայֆայական բնաւորութիւն է տուել նրան։ Դպրոցը քաղաքական գործունէութեան ասպարէզ չէ, և այն դպրոցը, որ կը ձգտի այդպիսի նպատակի, նա կը դատապարտուի մահուան և կը կորցնի ի վերջոյ գոյութեան իրաւունքը։

ՇԱՒԱՐՇ

---

# ՌՈՒՍԱԿԱՆ ԿԵԱՆՔ

I

Ներկայումս ռուսական ներքին կեանքի ամենահրատապ ու խոշորագոյն խնդիրը, որ զբաղեցնում է ողջ բանիմաց ու գիտակից հասարակութեան, պրեմիեր-մինիստր Ստոլիպինի շատ մեծ ու կարեւոր քաղաքական նշանակութիւն ունեցող հանգամանքներում տեղի ունեցած անսպասելի սպանութիւնն է։

Անկասկած Ստոլիպինի մահով կառավարութիւնը կորցրեց այն կարեւոր ոյժը, որ որոշ ու շեշտակի գործունէութեամբ ճըգնում էր ստեղծել մի այնպիսի պետական վարչական կազմ, որ ոչ Եւրոպան յիշեցնէ, ոչ էլ լինի դարձ դէպի յետ և ոչ էլ նըման ասիական միապետութեան։ Այս նպատակով վերջին տարիներում Ստոլիպինի կատարած որոնումները, ճիգերն ու ջանքերը կիսատ մնացին, որովհետեւ անսպասելի մահը վերջ տուեց այդ ամենին։

Հապա ինչպէս տեղի ունեցաւ այդ սպանութիւնը, այն էլ աներեւակայելի և սովորականից դուրս պայմաններում։

Մի ոմն Բօգրով, նախկին յեղափոխական, ապա պրովոկատոր դարձած և տարիներով գաղտնի ոստիկանութեան աշխատակից, ստանում է գաղտնի ոստիկանութեան կառավարչից թատրոնի հանդիսաւոր ներկայացման համար—որին ներկայ էր Թագաւոր Կայսրը—տոմսակ և մինչև իսկ ատրճանակ՝ կարծեցեալ յեղափոխականների դէմ պաշտպանուելու համար, մտնում է թատրոն և մահացու վիրաւորում Ստոլիպինին։

Չէ՞ որ այս դէպքը միանգամայն յիշեցնում է ազէֆութիւնը։ Ազէֆն էլ ծառայում էր և՛ յեղափոխութեան, և՛ կառավարութեան։ Նա մատնում էր գործիչներին, կամ տեղեկացնում էր գաղտնի ոստիկանութեանը՝ պատրաստուող տերրորիստական ակտերի մասին. նոյնն էլ անում էր Բօգրովը։

Միաժամանակ երկուսն էլ յեղափոխութեան համար կազմակերպում էին տերրորիստական ակտեր՝ Մեծ Իշխան Սերգիի, մինիստր Պլեվէի ու վերջապէս պրեմիեր-մինիստր Ստոլիպինի սպանութիւնները։

Ճակատագրական մի զուգադիպութեամբ՝ Ստոլիպինը հէնց ինքը դարձաւ նահատակ այն սիստեմի, որի ամենաջերմ պաշտպանը հանդիսացաւ Պետական Դումայում, երբ Ազէֆի պրովոկատորութիւնը բացուեց։ Այն ժամանակ կադէտները և ձախակողմեանները զգուշացնում էին կառավարութեանը չօգտուել պրովոկատոր գործիչներից, որոնց գործունէութիւնը հանդիսանում է մի տեսակ երկսայրի սուր, որ դառնում է թէ մէկ և թէ միւս կողմը։ Սակայն կառավարութիւնը չուզեց անսալ այդ խորհրդին և, վստահ՝ իր անսխալականութեան վրայ, շարունակեց նախկին սիստեմով գործել, սիստեմ, որ դեռ Ալեքսանդր II-ի օրով տեղի ունեցած ժանդարմական շէֆի՝ գեներալ Սուդէյկինի սպանութիւնից յետոյ համարվում էր դատապարտելի և վտանգաւոր միջոց պետութեան շահերի տեսակէտից։

Ութսունական թուականներին՝ Դէգաեվ, ապա ներկայումս Ազէֆ և Բօգրօվ․ սրանք դեռ ամենախոշոր դէմքերն են պրովոկատորութեան։

Պրովոկատորութեան միւս մանր գործիչների մասին կարիք էլ չկայ յիշատակելու։

Ահա այսպէս թանգ նստեց կառավարութեանն այն սխալ մեթօդը, որին նա տարիներով հետևում էր ու գործադրում հայրենիքի ու պետութեան բարօրութեան համար։

Ներկայումս կատարվում է խիստ քննութիւն Կիէվի, ուր տեղի ունեցաւ Ստոլիպինի մահափորձը, գաղտնի ոստիկանութեան բաժանմունքի բոլոր ճիւղերում, և հերթական է դարձել ղեկավար շրջաններում պետութեան ոստիկանական ողջ կազմի և հաստատութեան վերանորոգման խնդիրը։

Պարզ է, որ այդ քննութիւնը կը բանայ վերոյիշեալ հաստատութեան թերի և պակասաւոր կողմերը, կառավարութիւնն էլ միջոցներ ձեռք կառնէ, որպէս զի ապագայում նոյնանման ցաւալի դէպքեր այլ ևս տեղի չունենան, մանաւանդ զգոյշ կը լինի և հեռու կը պահէ իրան պրովոկատոր գործիչների աջակցութիւնից։

II

Արդեօք կարող է Ստոլիպինի մահից յետոյ տեղի ունենալ որևէ փոփոխութիւն ներքին քաղաքական կեանքի մէջ։ Պրեմիէր-մինիստր նշանակուեց ֆինանսների մինիստր Կօկօվցեվը,

որ չէ ցանկանում լինել Ստոլիպինի նման միաժամանակ ներքին գործերի մինիստր։ Այն ամենը, ինչ որ գրուեց այս նշանակութեան առիթով մայրաքաղաքների հեղինակաւոր և լաւատեղեակ թերթերում, ցոյց է տալիս, որ չպէտք է սպասել, թէ այժմ կարող է ռուսական ներքին կեանքը այլ ուղղութիւն ըստանալ։ Գտնում են, որ Կոկօվցեվի օրով կը վերանայ ստոլիպինեան այն քաղաքական գործունէութիւնը, որն այնպէս աջող բնորոշվում էր հակառակորդների կողմից հետևեալ խօսքերով՝ политика волевыхъ импульсовъ.

Ինչպէս յայտնի է, աջակողմեանները, խրախուսուած՝ ստոլիպինեան քաղաքականութիւնից, մշակեցին մի շարք ծրագիրներ՝ ռուսական այլազգի հպատակների իրաւունքները առաւել ևս կրճատելու համար, մինչև անգամ առևտրի ասպարէզում իսկ ցանկացան ազգայնական հողի վրայ սահմանափակումներ մտցնելու, սակայն Ստոլիպինի մահը եթէ ոչ բոլորովին, գոնէ ժամանակաւորապէս յետ մղեց այդ իղձերի իրականացման հեռանկարը, մինչև որ վերանորոգուած մինիստրական կազմի քաղաքական ուղին պարզօրէն կորոշուի։ Այնուամենայնիւ կարծում են, որ պրեմիէր-մինիստր Կոկօվցեվի օրով աջակողմեանների ծայրայեղ սանձարձակութիւններին վերջ կը տրուի, և իրանք ստիպուած պէտք է լինեն կառավարութեան վերաբերմամբ աւելի զսպուած պահել իրանց։

Ներկայումս, ի նկատի առնելով արտաքին քաղաքական խոշոր դէպքերը—մարօկկեան, թիւրքական, պարսկական խնդիրներ, չինական յեղափոխութիւն և այլն—առաւել ևս Ռուսաստանը կարիք ունի ներքին հանգստութեան, որպէս զի հնարաւորութիւն ունենայ ներկայ կառավարութիւնը ներգործական դեր կատարելու՝ իբրև առաջնակարգ և միաժամանակ խիստ շահագրգռուած պետութիւն Մերձաւոր և Հեռաւոր Արևելքների հարցերում։ Այդ տեսակէտից անհրաժեշտ է և ժամանակ էլ է, որ հոկտեմբերեան մանիֆէստով շնորհուած ազատութիւնները մարմնանան ներքին քաղաքական կեանքի մէջ։ Ապա թէ ոչ՝ միմիայն ռազմական պատրաստութիւնը կամ վերածնումը զինուորական ոյժի, ինչպէս ցոյց է տալիս պատմութիւնը, դեռ շատ քիչ է պետութեան հզօրութեան համար։

Ռուսաստանի անցեալն ևս այդ է հաստատում. քանի նա աւելի բարձր է կուլտուրապէս կանգնած եղել իր հարևան և սահմանակից պետութիւններից, միշտ զօրեղ է եղել նրանցից ու ընդարձակել հարաւում և արևելքում իր սահմանները. բայց հէնց որ բաղխուեց վերածնուած պետութեան՝ Եապօնիա-

յին, հանդիպեց անաջողութեան։ Ուրեմն ներկայումս քաղաքական-պետական կեանքի էական ու կենսական ջիղը կազմում է կուլտուրական առաջխաղացումը գիտութեան և ազատութեան շաւղով։

Եւ այժմ ի՞նչ ենք տեսնում. Ռուսաստանին շրջապատող դարաւոր յետամնաց պետութիւնները, որոնք մի ժամանակ աշխարհ սասանեցրին, իսկ յետոյ ընկան, իբրև խաւարի և տգիտութեան մէջ խարխափող ժողովուրդներ, այժմ ճգնում են վերածնուել՝ կորստեան անդունդից փրկելու երկիրն ու ժողովուրդը։ Թիւրքիան, Պարսկաստանը, Չինաստանը արդէն դէն շպրտել են ուզում միահեծանութեան ստրկական լուծը։

Կարո՞ղ է արդեօք Ռուսաստանը սառնասիրտ աչքով նայել իր սահմանակից խոշոր պետութիւնների վերածնութեան վրայ. Եապօնիան օրինակ։ Արգելել անհնար է և անօգուտ։ Հապա ի՞նչ անել։ Դրա պատասխանը մենք գտնում ենք Բարձրագոյնս շնորհուած հոկտեմբերեան մանիֆէստի մէջ, որի ամբողջական և լիովին գործադրութիւնը միայն կարող է վերածնել պետութեան և ժողովրդին, տալ հզօրութիւն դիմադրելու արտաքին բոլոր պատահարներին, որոնք այնքան աննախատեսելի և անսպասելի կերպով բռնկում են և յանկարծակիի բերում կառավարութիւններին։

III

Ահա թէ ինչո՛ւ շատ նշանակալից և յոյժ կարևոր նշանակութիւն է ստանում Երրորդ Դումայի առաջիկայ վերջին նստաշրջանի գործունէութիւնը և մօտիկ ապագայում տեղի ունենալիք Չորրորդ Դումայի ընտրութիւնները ներկայ քաղաքական խիստ տագնապալից և անակնկալներով լի պայմաններում, երբ Ռուսաստանը խորապէս շահագրգռուած է թէ Մերձաւոր և թէ Հեռաւոր Արևելքների խնդիրներով։ Չէ՞ որ ամեն րոպէ կարող է քաղաքական հրդեհ բռնկել, որին մասնակից են լինելու գրեթէ բոլոր մեծ պետութիւնները։ Ռուս ժողովուրդը Չորրորդ Դումայի առաջիկայ ընտրութիւններին պէտք է ցոյց տայ, որ անդառնալի կերպով պահանջ է դնում հաստատուն և գիտակցական պետական գործունէութիւնը հոկտեմբերեան մանիֆէստի իսկական իմաստով ու ոգով։

Տեսնենք ու յուսանք։

ԿԱԼԽԱՍ

# ԱՐՏԱՍԱՀՄԱՆԵԱՆ ԿԵԱՆՔ

## I

*Ներկայումս քաղաքական աշխարհը յուզող խնդիրներն են՝ Մարոկկօն, Պարսկաստանը և Թիւրքիան։ Ինչպէս երևում է, Մերձաւոր Արևելքը արդէն պէտք է շուտով հանդէս գայ՝ իբրև հում նիւթ եւրոպական դիւանագիտութեան դանակի, որն արդէն սրվում է և պատրաստվում պատառ-պատառ անելու այդ համով բաժինը եւրոպական մեծ պետութիւնների միջև։*

*Իսկ ի՞նչ է ներկայացնում առհասարակ Մերձաւոր Արևելքը։*

*Մի շարք մեծ ու փոքր մահմեդական պետութիւններ ու երկիրներ, որոնց հեռաւոր ծայրերը կազմում են՝ արևմուտքում Մարոկկօն և արևելքում Աֆղանիստանը։*

*Իսկապէս երկրագնդի այս մասն է կազմել մահմեդականութեան կենտրոնավայրը, որն իբրև պետականութիւն, այն էլ մահմեդական պետականութիւն, ձգտել է կրօնական հողի վրայ ի մի ձուլել բազմազան հպատակ ազգութիւններ և ստեղծել է մի կամ մի քանի պետութիւններ, որոնց գոյութեան և բարգաւաճման հիմունքը կամ պետականութեան գաղափարը կազմել է իսլամը։*

*Սակայն ի՞նչ է ասում պատմութիւնը։*

*Այն բոլոր պետութիւնները, որոնք իրանց գոյութեան առաջնակարգ գործօնը համարում են կրօնը, երկար չեն դիմանում, քայքայվում են և կործւում կամ մանրանում։ Մարդկային անցեալից կարելի է բազմաթիւ օրինակներով հաստատել այդ օրէնքի ճշտութիւնը։*

*Գիտութիւնը և արուեստը տեխնիկայի ու արհեստների հետ միասին կազմում են ամեն մի պետութեան այն հիմնական գործօնը, որով ապահովվում է նրա գոյութիւնն ու բարգաւաճումը։ Ի՞նչ բանի է արդեօք Եապօնիան պարտական իր պետական հզօրութեամբ և այն առաջնակարգ քաղաքական դիրքով, որ նա գրաւել է մեծ պետութիւնների ընտանիքի մէջ։ Ոչ*

թէ կրօնին, այլ գիտութեանը և արուեստին, տեխնիկային և արհեստներին։ Ճապոնիայում սկզբից գոյութիւն են ունեցել բազմազան կրօններ, այժմ էլ տիրապետում է հեթանոսութիւնը՝ բուդդայականութիւնը իր ճիւղաւորութիւններով, յետոյ միաստուածութիւնը՝ քրիստոնէութիւնն ու մահմեդականութիւնը նոյնպէս իրանց ճիւղաւորութիւններով, և դրա հետ միասին կատարեալ կրօնական անխտրութիւն և անտարբերութիւն. ոչ ոք ոչ ոքի հաւատով ու պաշտամունքով ոչ հետաքրքրվում է և ոչ էլ որևէ նշանակութիւն տալիս։ Ջին-ճապոնական և ռուս-ճապոնական պատերազմներում հաւասարապէս աչքի էին ընկնում ամեն հաւատի ու կրօնի՝ բուդդայական, մահմեդական, քրիստոնեայ և այլ ճապոնացի զինուոր-հերոսներ։ Նոյնն էր նաև սպանո-ամերիկական պատերազմի ժամանակ, երբ ամեն ազգութեան (ֆրանսիական, անգլիական, գերմանական և այլն) ու կրօնի (կաթօլիկ, բողոքական և այլն) ամերիկացի զինուորները, որոնք ուղղակի դաշտային պարապմունքից էին կոչուած—որովհետև Միացեալ Նահանգներում գոյութիւն ունի միլիցիա և ոչ մշտական զինուորագրութիւն—ամենայն անվեհերութեամբ առաջ էին գնում ամերիկական դրօշակի տակ և պանծալի յաղթութիւններ ունենում ընդդէմ ռւմ։ Ընդդէմ տարիներով մարզուած ու վարժուած սպանիական զօրքերի։ Եւ Սպանիան կրեց պարտութիւն, որովհետև կրօնն ու հոգևորականութիւնը վաղուց հասցրել էին նրան քաղաքական անկման և թուլութեան։

Եւ ահա 20-րդ դարի շեմքում մենք ականատես ենք, թէ ինչպէս մի ժամանակ աշխարհը սասանեցնող երկու պետութիւններ—Թիւրքիան և Պարսկաստանը—այժմ գտնվում են ողորմելի վիճակի մէջ. նրանց գոյութիւնը նման է այն մարդուն, որը, չունենալով որևէ ապաստան, դռնէ դուռ է ընկնում և սրան-նրան աղերսում պատսպարելու և պաշտպանելու իրան։ Կարիք չկայ կանգ առնելու մահմեդական միւս մանր—Մարոկկօ, Տունիս, Եգիպտոս, Աֆղանիստան և այլն—երկիրների վրայ, որոնք ուղղակի խաղալիք են մեծ պետութիւնների դիւանագիտութեան և որոնց գոյութիւնը աւելի շուտ նրանց՝ մեծ պետութիւնների համար է, քան թէ իրանց։

Զառամեալ Իրանին և քաղաքականապէս հիւանդ լինելուց վաղուց դալկացած Թիւրքիային ներարկեցին սահմանադրութեան հակաթոյնը, այն յուսով թէ վերջապէս այդ ձևով գուցէ իսլամին կաջողուի խաբել խաչին և ազատել մահմեդական աշխարհը քրիստոնեայ պետութիւնների ձեռնմխելիութիւնից, սակայն այդ էլ չօգնեց։ Ինչու։ Որովհետև սահմանադրութիւնը

պէտք է ծառայէ իսկապէս ժողովրդի համար և ոչ թէ ուրիշներին խաբելու։

Ամէն մի կառավարութեան համար ամենավտանգաւորը այն է, երբ նա իր ներքին քաղաքականութեան նպատակ է դնում կեղծիքն ու խաբեբայութիւնը։

Թիւրքիան մտցրեց սահմանադրութիւն, որպէս զի ազատէ իրան եւրոպական խնամակալութիւնից և բաժան-բաժան լինելուց և ոչ թէ իր ժողովրդի և մանաւանդ քրիստոնեայ ժողովուրդների բարօրութեան համար։

Այս շատ լաւ գիտէին եւրոպական պետութիւնները, որոնք արդէն իրանց գործելակերպով կարծէք թէ ուզում են ասել՝ մեզ չես խաբի։

Ամենից առաջ Աւստրիան սեպհականացրեց Բօսնիան ու Հերցեգօվինան, այժմս էլ Իտալիան է սեպհականացնում Տրիպօլիսը։ Բալկանեան մանր պետութիւններն էլ պատրաստ և ատամները սրած սպասում են, թէ երբ է իրանց հերթը գալու։ Սահմանակից երկու հզօր պետութիւնները՝ Աւստրիան և Ռուսաստանը եւս, որոնք ամենից շատ են շահագրգռուած Թիւրքիայի վիճակով, ի՜նչ խօսք, որ չեն կարող անտարբեր լինել և լոկ հանդիսատեսի դեր կատարել։

Այսպէս ուրեմն՝ ներկայումս մահմեդական երկիրները եւրոպական դիւանագիտութեան խոհանոցի նիւթն են կազմում, և թէ ինչ տեսակ դիւանագիտական խորտիկներ է Եւրոպան հրամցնելու աշխարհին՝ այդ ցոյց կը տայ մօտիկ ապագան։

Մահմեդական երկիրների այդ տեսակ ճակատագրական ցաւալի վախճանը շատ բնական է և անխուսափելի։ Ինչո՞վ է ուզում մահմեդական աշխարհը դիմադրել այդ մահացու հարուածին. սրբազան պատերազմով և քրիստոնեայ հպատակների ջարդով։ Բայց մի՞թէ այդ կարող է փրկել նրան։ Ո՛չ։ Դիցուք թէ Պարսկաստանում և Թիւրքիայում հայերին բնաջինջ արին։ Ի՞նչ օգուտ. դրանով միայն մահմեդական աշխարհը աւելի կը փութացնէ իր մօտալուտ քաղաքական մահուան րոպէն։

Այսպէս ուրեմն՝ ներկայ քաղաքական պայմանները նպաստաւոր են Թիւրքիայի աստիճանական անդամահատութեան, որին անսպասելի փութկոտութեամբ սկիզբ դրաւ Իտալիան։

Այժմ անցնենք Թիւրք-իտալական պատերազմին։

## II

Տրիպօլիտան երկիրը մեզանից 1300 տարի առաջ պատկանում էր աշխարհիս ամենահզօր՝ Հռոմէական պետութեան, որի քաղաքակրթութեան հետքերը՝ բազմաթիւ աւերակների մնացորդներ՝ սփռուած են նրա մէջ։ Հռոմէական պետութիւնը ժառանգող՝ այժմեան իտալական պետութիւնը նորից փորձ է անում յետ գրաւելու Տրիպօլիտանը, որը դարեր առաջ ընկնելով մահմեդականութեան լծի տակ՝ դարձաւ Թիւրքիայի սեպհականութիւն։

Տրիպօլիտանի մակերևոյթը ունի $1^1/_2$ միլիոն քառակուսի կիլօմետր։ Այդ երկիրը գտնվում է Հիւսիսային Աֆրիկայի միջին ծովափնային մասում՝ Եգիպտոսի և Տունիսի միջև՝ և բաղկացած է երեք գլխաւոր մասերից. արևելեան մասը, որ սահմանակից է Եգիպտոսին, կազմում է Բարկա (Կիրենայիկա) կոչուած բարձրաւանդակը, որն իր կազմութեամբ և մակերևոյթով տարբերվում է Հիւսիսային Աֆրիկայի աւազոտ մասից և յիշեցնում է Հարաւային Եւրոպայի ցամաքային կազմութիւնը, որովհետև դա մի մնացորդ է այն ցամաքային կապի, որ գոյութիւն է ունեցել երկրաբանական որոշ շրջանում Եւրոպայի և Աֆրիկայի միջև։ Երկրորդ մասը կազմում է Բարկա բարձրաւանդակից դէպի արևմուտք՝ մինչև Տունիսի սահմանը գտնուող երկիրը, բուն Տրիպօլիտանը, ուր ձգվում են ոչ շատ բարձր լեռնաշղթաների ճիւղաւորութիւններ, որոնք կազմում են Ատլաս լեռների շարունակութիւնը։ Երրորդ մասը՝ հարթութիւններ դէպի հարաւ, որոնք ունեն անապատային բնոյթ և կոչվում են Ֆէցցան։

Ծովափնեայ մասի, մանաւանդ Բարկայի կլիման զուարճական և առողջարար է, միջին ատիճանը տարեկան ջերմութեան Րէօմիւրի $+16^0$-ի է հաւասարվում, իսկ օազիսներում $+24^0$-ի։

Բուսականութեամբ ամենահարուստն է Բարկան, ուր հանդիպում էք և տրօպիկական, և հիւսիսային գօտիների պէս-պէս տեսակները։ Բսնում է նաև պիստակենի։

Ազգաբնակութիւնը մօտ մէկ միլիօն է. 15,000 սեֆիօլ- (սպանական հրէաներ), 5,000 քրիստոնեաներ, որոնց մեծ մասը մալտացիներ են, 50,000 նեգրեր, 50,000 Թիւրքեր՝ զինուորներ և աստիճանաւորներ, մնացեալը՝ գլխաւոր զանգուածը՝ բերբերներ և արաբներ։ Թէպէտև ընդհանուր՝ գործածական լեզուն

իտալերէնն է և երկրում գոյութիւն ունեն իտալական դպրոցներ, սակայն իտալացիների թիւը շատ էլ մեծ չէ, ընդամենը մօտ մի հազար հոգի։ Տեղական առևտուրը գտնվում է հրէաների ձեռքում։

Տրիպոլիտանը իր աշխարհագրական դիրքի շնորհիւ հնուց համարվում էր ամենայարմար և աւելի կարճ հաղորդակցութեան ճանապարհ Կենտրոնական Աֆրիկայի և Հարաւային Եւրոպայի միջև։ Այդ երկրի միջով արտահանվում է տարեկան մօտ երեք միլիօն րուբլու ապրանք, իսկ ներմուծվում է մօտ չորս միլիօն րուբլու։

Տրիպոլիտանի գլխաւոր քաղաքն է Տրիպոլիսը, որ ունի ոչ մեծ, բայց լաւ նաւահանգիստ։ Այդ քաղաքը կանգնեցուած է հնագոյն Էա քաղաքի աւերակների վրայ, որը հռոմէական տիրապետութեան ժամանակ Մեծ Լեպտիս և Սաբրատ քաղաքների հետ կազմում էր երեք քաղաքների դաշնակցութիւն, որից և ծագել է այժմեան Տրիպոլիս անունը։ Բարկայի գլխաւոր քաղաքն է՝ Բէնգազի, իսկ Ֆէցցանինը՝ Մուրզակ։

Առհասարակ Տրիպոլիտանը համեմատած Հիւսիսային Աֆրիկայի այլ ծովափնեայ երկիրների հետ՝ աւելի պակաս նշանակութիւն ունեցող ու աղքատ է։ Այդ երկրի բնական ժառանգ համարվում է Իտալիան, որը մի քանի ժամուայ հեռաւորութեան վրայ է գտնվում նրանից և որի հարաւային մասը բաւական նմանութիւն ունի Տրիպոլիտանի ծովափնեայ մասին։

Ինչպէս նկատեցինք այս յօդուածի սկզբում, Թիւրքիայի սահմանադրութիւնը հետևանք էր այն բանի, որ կամաց-կամաց հասունանում էր Թիւրքիային բաժան-բաժան անելու հարցը։ Երբ Անգլիան և Ռուսաստանը յանգան քաղաքական համաձայնութեան, իսկ յետոյ էլ ստեղծուեց եռապետական համաձայնութիւնը (Ֆրանսիա, Անգլիա և Ռուսաստան), հերթական էր այն ժամանակ Մակեդոնիայի հարցը, որին խաղաղեցնելու համար եռապետական համաձայնութիւնը ծրագրում էր ներքին ինքնավարական կառավարութիւն։ Այս բանին դէմ էին Թիւրքական առաջաւոր և լուսամիտ տարրերը՝ մակեդոնական զօրաբանակի սպաները, ժէօն-Թիւրքերը և այլն, որոնք շատ լաւ գիտակցում էին, թէ Թիւրքական քրիստոնէաբնակ որևէ նահանգի ինքնավարութիւն տալը՝ նշանակում է անջատման կամ այդ մասի կորստեան ուղին բանալ։

Թիւրքիան բաժան-բաժան անելուց փրկելու միակ միջոցը սահմանադրութիւնն էր, որը հապճեպ և առերես ընդունելով՝ ուզում էին Եւրօպային համոզել, որ այլ ևս Թիւրքիան նախ-

կին բարբարոս երկիրը չէ, որ առիթ տար Եւրոպային պատառ-պատառ անելու նրան։ Եւրոպական պետութիւնները, որոնք շատ լաւ գիտէին, թէ ինչ նպատակով է Թիւրքիան իբր թէ սահմանադրական երկիր դառնում, ոչ մի առիթ չեն բաց թողնում ցոյց տալու Թիւրքիայի բախտը ղեկավարողներին, որ նրանք խաբուած չեն և հետևելու են նախկին քաղաքականութեան, այսինքն աստիճանաբար անդամահատելով նրան՝ ժառանգելու են նրան։

Առաջին օրինակը տուեց Աւստրիան, օգտուելով շատ նպաստաւոր քաղաքական հանգամանքներից և Թիւրքիայի ներքին ալեկոծեալ վիճակից։ Այժմ էլ Իտալիան է անդամահատում Թիւրքիային, օգտուելով նրա ներքին խառնակ և անորոշ վիճակից, երբ ժողովուրդը դժգոհութիւն է յայտնում նոր ռեժիմի դէմ, որ ոչինչ չէ անում նրա համար, երբ կուսակցական խռովութիւններն ու ժէօն-թիւրքերի կոմիտէի սանձարձակութիւնները նոյն իսկ զօրքի մէջ թշնամութիւն են յարուցել։ Ահա թէ ինչու ներկայումս Թիւրքիան իր սահմանադրութեամբ գտնւում է խոշոր անակնկալների նախօրեակում։

Այժմ նա միջնորդում է մեծ պետութիւնների առաջ՝ ինչ գնով էլ լինի, միայն թէ իր անձեռնմխելիութիւնը ապահովեն իրան։

Այսպէս ուրեմն՝ Թիւրքիան աստիճանաբար անդամահատւում է. Տրիպոլիսը կորցնելով, նա դուրս է քշվում Աֆրիկայից. յետոյ հերթը գալու է Կրետէին՝ որի միայն անուանական տէրն է, Մակեդոնիային, Ալբանիային, Արաբիային և այլն։ Վերջ ի վերջոյ Թիւրքիան դուրս է քշուելու նաև Եւրոպայից ու դառնալու է այնտեղ, որտեղից նա առաջացաւ, այսինքն Փոքր-Ասիա։

Յայտնի արևելագէտ և մի ժամանակ պանիսլամիզմին և Աբդուլ-Համիդին խունկ ծխող պրոֆ. Վամբերին այժմս է յայտնում, որ մահմեդականութեան քաղաքական գոյութիւնը երկար չէ կարող տևել. Նրա վախճանը մօտենում է, որովհետև մահմեդականը աւելի սիրում է աղօթել, քան քաղաքական կեանքով ապրել. իսկ աղօթքի կամ կրօնի վրայ հիմնուած պետականութիւնը հաստատուն չէ, որին ապացոյց նոյն իսկ լուսաւորեալ պետութիւնների անցեալը։

Շատ պարզ է, որ երբ այլևս չկան Աբդուլ-Համիդի սակիները, նրա նախկին խնկարկուները այժմս ուրիշ տեսակ են խօսում։

Իսկ ո՞վ է մեղաւոր Թիւրքիայի ներկայ օրհասական վիճակի։

Թիւրքերի կարծիքով, ինչ խօսք, որ քրիստոնեաները և յատկապէս հայերը։ Ամեն մէկին էլ պատմութիւնից լաւ յայտնի է, թէ երբ եւրոպական պետութիւնները ընդարձակել են իրանց սահմանները Թիւրքիայի հաշուին, կամ սլաւօն ազգերին ազատել են թիւրքական լծից, Թիւրքերը իրանց վրէժը հանել են խեղճ ու կրակ հայ ժողովրդից, որը ամենի համար էլ նահատակի դեր է կատարել։ Մինչև իսկ Թիւրքական սահմանադրութիւնն էլ հայ ժողովրդի արեան գնով՝ Ադանայի կոտորածով մուծվեց։

Հէնց այժմ էլ, ինչպէս հաղորդում են լրագիրները, Պօլսում տիրում է խիստ տագնապալից դրութիւն, սպասվում է կոտորած, և հարուստները հեռանում են քաղաքից։

Թիւրքիան պէտք է գիտենայ, որ եթէ հայ ժողովրդին բնաջինջ անէ, դրանով իրան չէ կարող փրկել. Նրա միակ ճանապարհը փրկութեան և իսկական վերածնութեան, հզօրութեան՝ կառավարչական ապակենտրոնացման սիստեմն է, այսինքն նահանգների ներքին ինքնավարութիւններ՝ անխտիր բոլոր հպատակ ազգութիւնների համահաւասար իրաւունքներով և միևնոյն ժամանակ իսլամի ու քրիստոնէական կրօնների կատարեալ անխտրութիւն։

Ա. Ն.

# ՆԱՄԱԿ ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ *)

«Մշակի» № 174-ում տպուած Հ. Առաքելեանի «Նամակ խմբագրութիւնից» ընթերցող հասարակութիւնն արդէն գաղափար կազմեց այն ցաւալի ու խայտառակ դէպքի մասին, որ տեղի ունեցաւ Ղ. Աղայեանի թաղման օրը՝ Օրթաճալայի այգիներից մինում՝ Լէօի խօսքերով ասած՝ հայ «ինտելիգէնցիայի և ուսուցչութեան մի մասի» ներկայութեամբ։

Այդ խիստ մերկացումը, բնականաբար, ամենից աւելի զայրացրել է Լէօին, որը նոյնպէս ներկայ էր—ինչպէս ինքն է ասում—բարի դիտաւորութեամբ կազմակերպուած այդ ճաշկերոյթին։ «Ամենից աւելի» ենք ասում նրա համար, որ նա՝ Լէօն, իրան յատուկ դարձած փաստերի յեղաշրջմամբ, «Արօրի» Շաւարշ ստորագրութիւնը վերագրեց Հ. Առաքելեանին և բոլորովին անտեղի կերպով բութ զէնքով մոլեգին յարձակում գործեց Առաքելեանի վրայ. իսկ վերջինս չլռեց և իրողութիւնը վերականգնելու նկատումով պարզեց հասարակութեան առաջ յիշեալ խայտառակ դէպքի բոլոր մանրամասնութիւնները վերոյիշեալ իր «Նամակ խմբագրութեան» մէջ. իսկ այդ մանրամասնութիւնները դժբախտաբար վերաբերում էին նաև Լէօին...

Հ. Առաքելեանի վերոյիշեալ մերկացումից յետոյ Լէօի հանգիստը կորաւ. Նա «Հորիզոնի» № 179-ում մի բաց նամակ

---

*) Մենք ստիպուած ենք դարձեալ մի քանի խօսք ասել այն գայթակղութեան դէպքի առիթով, որ տեղի էր ունեցել Ղ. Աղայեանի թաղման օրը, նշաւակելու համար այդ դէպքի հերոսներից մի քանիսի և Լէօի ու նրան օգնութեան հասած անճշմարտախօս վկաների յերիւրանքները։ Այդ նպատակով տպում ենք մեզ ուղարկուած հետևեալ յօդուածը։

Մենք գտնում ենք, որ որքան էլ Լէօ, Գ. Վարդանեան, Ա. Աթանասեան, Ս. Յարութիւնեան—դէպքին մասնակից անձինք—ջանում են մի կերպ թաղել խնդիրը և այնպէս ձևացնել, թէ եղածը չնչին բան է, բայց հէնց իրանց յօդուածներով և մանաւանդ այն հանգամանքով, որ ամենքն էլ խոյս են տալիս պատմել «ցաւալի դէպքի» իսկական պատկերը, իրաւունք են տալիս մեզ և հայ հասարակութեանը՝ դատապարտել նրանց վարմունքը։

ուղղեց «հոգեհացին» ներկայ եղողներից 17 հոգու՝ աղերսելով պաշտպանել իրան, «յանուն ինտելիգենցիայի և ուսուցչական մի մասի պատուի»։ Բաց նամակին արձագանգ տուեցին Օրթաճալայի քէֆին մասնակցողներից մի-երկուսը, որոնց թւում և Ա. Աթանասեան, որ իր «չէզոքութեամբ» ուզեց իւղ քսել Լէօի հացին։ Աթանասեանը Ղ. Աղայեանի յիշատակի հացը «Հորիզոնի» խմբագրութեան նախաձեռնութիւն չէ համարում, ասում է՝ որ այդ հացկերոյթը բոլորովին քէֆի բնաւորութիւն չէր կրում սկզբում, բայց յետոյ սկսվում է սկզբունքային տաք վիճաբանութիւն, իսկ ամենավերջը, երբ հեռացան Լէօ, Շիրվանզադէ, Սաղաթէլեան և այլք, նոր բացուած սեղանի վրայ տեղի է ունենում մի մասնաւոր ցաւալի դէպք։

Այստեղ մեր պարտքն ենք նկատում երևան հանել Աթանասեանի անճշտութիւնները։

Խայտառակ դէպքի հենց հետևեալ օրը ինքն Աթանասեանըն էր, որ հեւ ի հեւ ներս վազեց «Մշակի» խմբագրատուն և ներկայ գտնուողների մօտ սկսեց մեծ ամպլօմբով, ամենայն մանրամասնութեամբ, նկարագրել տեղի ունեցած սենսացիօն դէպքը իբրև սկզբից մինչև վերջը ականատես եղած։

Եւ նոյն Աթանասեանի (ինչպէս նաև ուսուցիչ Գ. Հ—ի) այդ պատմածի հիման վրայ էլ լոյս տեսան Շաւարշի նկատողութիւնը «Արօրում» և Հ. Առաքելեանի մերկացումը «Մշակում»։

Աթանասեան, որին նոյնպէս կպել էր ճիպոտի մի ծայրը իբրև Օրթաճալայի քէֆին մասնակցողներից մէկին, իր սիրտը հովացնելու համար ի հարկէ ստիպուած էր մի կերպ քօղարկել իրողութիւնը և անաչառութեան դիմակ տնած՝ իբր թէ միջին ճանապարհով «ճշմարտութիւնը վերականգնել...»։

Սակայն Լէօն չգոհացաւ «ճշմարտախօս» Աթանասեանի դատավճռից և տես «Հորիզոնի» № 183-ի մէջ ցասումով իր մաղձն է թափում այս անգամ ամբողջ հայ մամուլի գլխին, որ դաւաճանութիւն է նիւթել իր դէմ և ուզում է «ուտել-վերջացնել նրան»...

Ինչպէս ողբալի կացութիւն, խեղճ ու անճար Բաբախանեան...

«Մշակը» իր պոչ «Արօրով», «Սուրհանդակը» իր պոչ «Խաթաբալայով», «Տարազը» իր պոչ «Աղբիւրով», և այլն և այլն, խօսքները մէկ արած, պաշարել են Լէօին և կամենում են կուլ տալ։ Իսկ նաչար Լէօն այծեամի նման կանգնել է բլուրի գլխին և պաշտպանութիւն որոնում Ալլահից...։

Բայց «ուտուելուց» առաջ, երէկուայ ասածը այսօր ուրացող Լէօն իր փէշակը չէ մոռանում գործ դնել. օրինակ՝ իր առաջին նամակում վերոյիշեալ ցաւալի դէպքը նա անուանում է լոկ համեստ հոգեհաց, «յանիսեան խիստ տօթին մի երկուժամ հանգստանալ», իսկ այս անգամ կոչում է սկանդալ: Ինքը Լէօն, որ էն գլխից հալածել է իր չսիրած մարդկանց (ականջդ կանչի, Շիրվանզադէ, Նախ քան յօբելեանդ ի հարկէ), իր այդ առաքինութիւնը վերագրում է «Մշակին»...

Ոչ, չշարունակենք: Լէօն կարծում է, թէ սարի ծայրին կանգնած այծեամի նման պաշարուած է հայ մամուլից: Բայց մենք կասենք. դուք, պ. Լէօ, արդէն վիրաւոր էք, եթէ ոչ բոլորովին անշնչացած, հայկական գրականութեան մէջ ճիշտ այն օրից, երբ միմիայն «Մշակը» իր առաջին խնայող գնդակը արձակեց ձեր վրայ... Այն օրից ի վեր դուք մոռացուել էք իբրև մշակական Լէօ ընդ միշտ, և եթէ հանգիստ էլ չէք մնում, հայհոյաբանութեան ու սրախօսութեան հոլովումներ էք անում, այդ էլ ներելի է մասամբ, քանի որ «Մշակի» ձեզ հասցրած վէրքը խորանում է աստիճանաբար և մօտ է այն րոպէն, երբ հայ անաչառ գրականութիւնը ընդմիշտ մոռացած կը լինի փաստերը յեղաշրջող Լէօին...

X.

# ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆ

**Հայ սովորութական իրաւունքը** *(հին հայոց իրաւունքը և նրա հետազօտութեան մեթօդը, առևանգմամբ և գնմամբ ամուսնութիւն), Խ. Սամուէլեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 101, գ. 50 կ.։*

Այս խորագրի տակ հեղինակը մտադրուել է աստիճանաբար լոյս ընծայել հին հայոց իրաւունքի վերաբերեալ մի շարք ուսումնասիրութիւններ։ Մեր առաջն է դրուած նրա ուսումնասիրութեան առաջին պրակը, որ կրում է «Առևանգմամբ և գնմամբ ամուսնութիւն» վերնագիրը։ Այն հարուստ հում նիւթը, որ ունի ազգագրական և իրաւաբանական բնոյթ և ցրուած է գլխաւորապէս մեր զանազան հին և նոր պարբերական գրականութեան մէջ, հեղինակը ամենայն տոկունութեամբ մի առ մի հաւաքել է և, բերելով որոշ սիստեմի, հանել է համապատասխան եզրափակումներ։

Խօսելով հին հայոց իրաւունքի և նրա հետազօտութեան մեթօդի մասին, հեղինակը շատ իրաւացի կերպով նկատում է, թէ՝ պատմական ու աստուածաբանական գրականութեամբ բաւ ամենայնի հարուստ հայ գրականութիւնը վերջին ծայր աղքատ է իրաւաբանական գրուածքներով։ Յիրաւի բացառութիւն կազմողը այդ պարագայում միմիայն Մխիթար Գօշի «Դատաստանագիրք հայոց»-ն է, որը եզակի երևոյթ է՝ մեր գրականութեան մէջ։

Եւ հին հայոց իրաւունքը հիմնաւորապէս ուսումնասիրելու համար իսկապէս միանգամայն անբաւարար են այն հատ ու կտոր պատմական իրաւաբանական աղբիւրները, որոնք հասել են մեզ։ Ինչպէս Մխիթար Գօշի (մասամբ), այնպէս էլ Լամբրոնացու և Սմբատ Սպարապետի կազմած օրինագրքերը ոչ մի օրգանական առնչութիւն չեն ունեցել այն կենդանի աղբիւրների հետ, որոնք բղխել են հին հայ ժողովրդի հասարակական փոխադարձ յարաբերութիւններից։ Քրիստոնէական կրօնի մուտքը հին հայոց մէջ, որ տեղի է ունեցել աւերածութեան ու մասսայական ահաբեկման միջոցով, ժողովրդի փոխ-յարաբե-

րութիւնների մէջ մտցրել է մի խոշոր դիսօնանս: Հարկաւ իրանական կուլտուրայով սնուած ժողովրդի համար այդ աններդաշնակութիւնը չէր կարող անմիջական ազդեցութիւն ունենալ նրա տնտեսական-սօցիալական պայմանների ձեւափոխումների տեսակէտից: Սակայն հէնց այդ կրօնն է, որ մեծապէս ազդել է կղերական ոգով կրթուած մեր վերոյիշեալ հեղինակների վրայ, որոնք՝ թողած բուն ժողովրդի իրաւաբանական նորմերի արձանագրութիւնը՝ տուել են մեզ գլխաւորապէս եկեղեցական ոգով ըմբռնուած մի շարք օտար հողի վրայ ծագում առած օրէնքներ և կանոններ:

Հին հայոց իրաւունքի ուսումնասիրութիւնը խոշոր չափերով պէտք է կապուած լինի նոյն ժողովրդի կուլտուրայի զարգացման պատմութեան հետ, նրա ուսումնասիրութիւնը պէտք է անցնի սօցիալ-տնտեսական ժամանակակից, նոյն էպօխային համապատասխան պայմանների ուսումնասիրութեան բովից: Եւ հեղինակը, լինելով կողմնակից նիւթապաշտական դպրոցին, շեշտում է, թէ «հասարակական կեանքի զարգացումը չափվում է հասարակութեան արտադրողական եղանակների զարգացմամբ»: Նա աշխատում է իր եզրափակումների համար որոշ փաստեր որոնել նաև հին հայոց կուլտուրայի պատմութեան մէջ: Խօսելով առանձին դասակարգերի մասին, որոնք գոյութիւն ունէին հին Հայաստանում, և նրանց փոխադարձ յարաբերութիւնների, հեղինակը ընդգծում է հայ նախարարական իրաւունքի և կղերական կազմակերպութեան (որը առաջնի հարազատ մանուկն էր) աւատական բնոյթը: Հայ սովորութական իրաւունքի (обычное право) ուսումնասիրութեան համար ընդունելով պատմական-համեմատական և անգլիական սօցէօլօգ Տայլօրի այսպէս կոչուած՝ մնացորդների մեթօդները, նա ձեռք է զարնում իր ուսումնասիրութեան: Ինչպէս ասացինք, ուսումնասիրութեան առաջին պրակն է՝ առեւանգմամբ ու գնմամբ կատարուած ամուսնութեան մասին: Որոշելով դրանց երկուսի բնոյթը, հեղինակը հակուած է ընդունելու այն սկզբունքը, թէ առեւանգմամբ ամուսնութիւնը աւելի նախնական ծագում ունի, քան գնմամբ ամուսնութիւնը: Մեր կարծիքով, այլ կերպ լինել չէր կարող, քանի որ կուլտուրայի պատմութիւնից գիտենք, որ յափշտակութեան սկզբունքը (ուրեմն և առեւանգման) աւելի հին է, քան թէ փոխանակութեան և գնման: Գիտենք, որ «հարսնացուի գնումը, ինչպէս և իւրաքանչիւր տուրեւառ, պայմանաւորուած է այն սօցիալ-կուլտուրական շրջանով, ուր տնտեսական գործունէութիւնն ու հասարակական արտադրողական

միջոցները հասել են համեմատաբար որոշ զարգացման» (երես 39)։ Հետևաբար, աւանդումը աւելի հին է իր ծագումով, քան թէ գնմամբ ամուսնութիւնը, չնայելով որ դրանք երկուսն էլ միաժամանակ գոյութիւն են ունեցել յետագայում*)։

Ապա հեղինակը սկսում է մի առ մի արձանագրել պատմական-ազգագրական այն փաստերը, որոնց մէջ արտացոլում են հին հայոց սովորութական իրաւունքի էական տարրերը։ Այսպէս՝ նա սկսում է Մովսէս Խորենացու գրքում եղած վիպասանութիւնից՝ («Հեծաւ արի արքայն...») և անցնում է հրապարակում եղած համարեա բոլոր առանձին աշխատութիւններին և զանազան պարբերականների տուած հարուստ նիւթերին։ Դասաւորելով այդ նիւթերը ըստ հարկի, հեղինակը եզրակացնում է, թէ հարսի գնումն ու աւանդումը հայ սովորութական իրաւունքի մէջ մի ժամանակ գերակշռող դեր է խաղացել ամուսնական հարցում։ Թէպէտ աւանդումը իբրև դրական երևոյթ այլ ևս կորցրել է իր նշանակութիւնը, բայց հարսի գնումը տակաւին պահպանվում է որոշ տեղերում «ամբողջովին կամ վերափոխուած ձևերով»։ Այս ամենը հարկաւ բղխում է կնոջ ստորադրեալ վիճակից, նրա իրաւական կախեալ դրութիւնից դէպի տղամարդը։ Հեղինակը միանգամայն ճիշտ եզրակացնում է, թէ դա հետևանք է սօցիալ-կուլտուրական կեանքի զարգացման ստոր աստիճանի, երբ տիրող իրաւաբանական յարաբերութիւնների մէջ կինը իրաւանց առարկայի շարքն էր դասուած։

Այս և սրա նման ուսումնասիրութիւնները իսկապէս եզակի երևոյթներ են հայ գրական անդաստանում։ Բանաստեղծ-քերթողներ ու նկարագրողներ մեզանում շատ կան, բայց հասարակական կեանքի երևոյթները ուսումնասիրողներ՝ չափազանց հազուագիւտ։ Ահա այդ տեսակէտից խրախուսանքի արժանի և միանգամայն գնահատելի է Խ. Սամուէլեանի ներկայ աշխատասիրութիւնը։ Առանց տատանուելու յանձնարարում ենք այս գիրքը ընթերցողներին։

ՍՈՒՐԽԱԹԵԱՆ

*) Աւելի հետաքրքրական էր պարզել այն հանգամանքն ևս, թէ գոյութիւն ունե՞ր արդեօք աւանդմամբ ամուսնութիւն մատրիարխատի շրջանում և ինչ ձևերով։

Խմբագիր-հրատարակիչ Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

Տպարան «Է Պ Օ Խ Ա», Գանօվսկայա № 3.

# ՆՈՐ ՍՏԱՑՈՒԱԾ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

---

1. Սալբի *(ազգ. վիպասանութիւն պարսկահայոց կեանքից), Րաֆֆիի,* I *հատոր, Վիէննա, 1911 թ., էջ 534, գ. 3 ր.։*
2. Վէպիկներ, *Լ. Ն. Տոլստոյի,* II *գիրք, Մոսկվա, 1911 թ., էջ 256, գ. 1.։*
3. Կարապետ եպիսկոպոս Տէր-Մկրտչեան *(կեանքն ու գործունէութիւնը), Երուանդ Տէր-Մինասեանցի, Մոսկվա, 1911 թ., էջ 101, գ. 25 կ.։*
4. Վեհափառ Իզմիրլեանը, *բժ. Սիմէօն Շահ-Նազարեանցի, Մոսկվա, 1911 թ., էջ 70, գ. 20 կ.։*
5. Դերձակ աղուեսը, *պատկերազարդ, Գ. Հայկունու, Թիֆլիս, 1911 թ., գ. 25 կ.։*
6. Աքլարի դատը, *պատկերազարդ, Գուրգէն Հայկունու, Թիֆլիս, 1911 թ., գ. 20 կ.։*
7. Չըչիկ, *պատկերազարդ, Գուրգէն Հայկունու, Թիֆլիս, 1911 թ., գ. 5 կ.։*
8. Խերիբէլի, *Եօհաննա Սպիրիի, թարգմ. օր. Նուարդ Աղանեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 34, գ. 15 կ.։*
9. Ակկորդներ, *բանաստեղծութիւնների* Ա *գրքոյկ, Սիմ. Բաբիեանի, Ալէքսանդրօպօլ, 1911 թ., էջ 36, գ. 25 կ.։*
10. Արարատեան բարբառի ժողովրդական բառերի ցանկ. բառափնջիկ, *Սիօն վ. Տէր-Մանուէլեանի, Վաղարշապատ, 1911 թ., էջ 23։*
11. Արազած *շաբաթաթերթի № № 14, 15, 16 և 17, Նիւ-Եորք, 1911 թ.։*
12. Կոչնակ *շաբաթաթերթի № № 34, 35, 36, 37, 38, 39 և 40, Նիւ-Եորք, 1911 թ.։*
13. Տաճար *շաբաթաթերթի № № 32, 33, 34 և 35, Կ. Պոլիս, 1911 թ.։*
14. Ճանճ *երկշաբաթաթերթի № 5, Կ. Պոլիս, 1911 թ.։*
15. Աղբիւր *ամսագրի № 9, Թիֆլիս, 1911 թ.։*
16. Արարատ *ամսագրի № 8, Էջմիածին, 1911 թ.։*
17. Անահիտ *հանդէսի № 5—6 (մայիս-յունիս), 1911 թ., Պարիզ։*
18. Բազմավէպ *ամսագրի № 8 (օգոստ.), 1911 թ., Վենետիկ։*
19. Armenia *ամսագրի օգոստոսի №-ը, 1911 թ., Նիւ-Եորք։*
20. Madame *հանդէսի յունուարի №-ը, 1911 թ., Լոնդոն։*
21. Տեղեկագիր *1909—1910* ուսումն. տարուայ *Մարիամեան-*Յովնանեան օրիորդաց դպրոցի, *Թիֆլիս, 1911 թ., էջ 45։*

ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

ՆԵՐԿԱՅ 1911 ԹՈՒԱԿԱՆԻ

II ՏԱՐԻ „ԱՐՕՐ" II ՏԱՐԻ

# ԸՆԴՀԱՆՈՒՐ-ԳՐԱԿԱՆ, ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ, ԳԻՏԱԿԱՆ, ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԵՒ ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ

## Ա Մ Ս Ա Գ Ի Ր

«ԱՐՕՐԸ» հրատարակւում է Թիֆլիսում խմբագրութեամբ Հ. Առաքելեանի և աշխատակցութեամբ ռուսահայ, թիւրքահայ և պարսկահայ գրողների

«ԱՐՕՐԻՆ» աշխատակցում են՝

Աթանասեան Ա., Այգօյանեան Ա., բժշկ. Ազատարեան Բ., Ահարոնեան, բժշկ. Արծրունի Վ., Առաքելեան Արշակ, Ա. Թարէլեան Մ., Բաբգէն եպիսկոպոս Կիւլէսէրեան, Բաշալեան Լեւոն, Բաշինջաղեան Գ., Բարսեղեան Խ., Գասպարեան Յարութիւն, դոկտոր Գրէնֆիլդ Ջէմս, Դանիէլեան Լ., Դը-Գուբերնատիս Անջէլօ (սենատոր, իտալական պրոֆէսոր), Եզեկեան Ա., Եսայեան Զ., Էմմանուէլ ք. Նազարեան, Թէքէեան Վ., բժշկ. Թիրեաքեան Յարութիւն խան, Խանազատ Ռ., Խուրշիդ, Կալֆաս, Կրաքինիկեան Կ., Ղուկեան Ա., Մալխասեան Ս., Մալխազեան Ա., Մակլէր Ֆ. (ֆրանսիացի հայագէտ), Մեսրոպ ք. Մելեան, Յարութիւնեան Ի., Նաթանեան Միք., Նազարէթեան Ա., Նալմալեան, բժշկ. Շահբազեան Ա., բժշկ. Շիւեան Ս., Շահրիար, Շաւարշ, Չալխուշեան Գ., Չախմախսազեան Յ., Սարուխան Ա., Սուրխաթեան, Սամուէլեան Խ., Սպենդիարեան Յ., պրոֆէսոր Վեսելովսկի Ի., Տէր-Մինասեան Ե., Րօֆֆօզ Ստ., Քալանթար Ա.։

«Արօրի» բաժանորդագինն է «Մշակի» բաժանորդների համար 4 ր.։ Ոչ-բաժանորդները վճարում են 5 ր. աւելի

Դրամ և թղթակցութիւն ուղարկել այս հասցէով՝

Тифлисъ, редакція журнала „АРОРЪ".

Tiflis, Rédaction de la revue arménienne «Aror».

Թիֆլիս, «Արօր» ամսագրի խմբագրութիւն

Խմբագիր-հրատարակիչ՝ Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

# ԱՐՕՐ

## ՄԻԱՄՍԵԱՅ ՀԱՆԴԷՍ

ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՐԱԿԱՆ, ԳԻՏԱԿԱՆ-ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ
ԵՒ ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ.

II ՏԱՐԻ II ՏԱՐԻ

ՀՈԿՏԵՄԲԵՐ–ՆՈՅԵՄԲԵՐ

№ 10—11

1911

ԹԻՖԼԻՍ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Գրական ԳԻՏԱԿԱՆ Հասարակական-ՔԱՂԱՔԱԿԱՆ խաղաղասիր. ՀԱՆԴԻՍ.

# ԱՐՕՐ

ԵՐԿՐՈՐԴ տարի
ԹԻՖԼԻՍ 1911 թ.
ՀՈԿՏ.-ՆՈՅԵՄ.
№ 10—11

## ՍՏԻՊԵՑԻՆ

*(Պատմուածք իրական կեանքից)*

I

*Ամառ էր։ Այգիներում պտուղները հասունացել էին։ Ղ. քաղաքի սովորութիւնով՝ իւրաքանչիւր այգետէր երեկոյեան այգուց տուն դառնալիս՝ բաժանելու պտուղներ էր վերցնում իր հետ։ Ամեն երեկոյ այգուց վերադարձողներին քաղաքի սահմաններում դիմաւորում էին անհագին խմբերով չքաւոր երեխաներ, որոնք քաղցած գայլերի ձագուկների նման անհագին տարածութիւն վազելով՝ կառքերի, սայլերի, ձիաւորների ետևից աղաղակում էին՝ «Բիձա ջան, խնձոր տաս. բիձա ջան, ամիշ տաս», և ձեռք էին քաշում միայն այն ժամանակ, երբ սայլորդներն ու ձիաւորները մի քանի հատ խնձոր, տանձ կամ մի այլ պտուղ էին նետում դէպի այդ խմբերը։*

*Փողոցային երեխաների այդպիսի մի խումբ կտրեց նաև Բայթալ Աթուշենց Անդրէասի սայլի առաջը, երբ նա այգուց երեկոյեան տուն էր դառնում։ Երեխաների խառնաշփոթ աղաղակները, նրանց հանկարծակի գրոհ տալը Անդրէասի ձիուն շփոթեցրին։ Ձին կատաղեց։*

Ամենայն Թափով ցատկեց, առաջ սլացաւ դէպի փոքրիկների խումբը։ Լսուեց մանուկների օրհասական ճիչն ու աղաղակը և մի սուր լացի ձայն. այնուհետև ամեն բան ծածկուեց փոշու Թանձր մառախուղի մէջ։ Անդրէասը հասկացաւ իրողութիւնը, հազիւ զսպեց ձիուն։ Իջաւ սայլից, մօտեցաւ երեխաների խմբին։ Փողոցի փոշու մէջ ընկած էր 10 տարեկան մի երեխայ։ Նա երկու ձեռքով սեղմել էր ոտքը, լալիս էր ու կանչում՝ «Մամա ջան, ա՜խ ոտս, վա՜յ ոտս։ Ոտս կոտրուեց»։

Անդրէասը երեխային իսկոյն բարձրացրեց, հարց ու փորձ արեց։

—Ո՞ւմ տղան ես։

Նրա տեղ պատասխանեցին ընկերները.

—Մառալի դեադէն ա։

—Ի՞նչ Մառալ։

—Ա՛յ, այստեղ մօտ է բնակվում։ Դրա հայրը Օթարչիենց այգում մշակութիւն է անում։

Մինչդեռ Անդրէասը տեղեկութիւններ էր ժողովում, երեխաներից մի քանիսը վազեցին Մառալի տուն և նրա կնոջը հաղորդեցին որդու՝ սայլի տակն ընկնելու լուրը։

Մայրը յուսահատ, գլխին, ծնկներին հարուածելով՝ հասաւ դէպքի տեղը։ Օտար անձի ներկայութիւնը, որդուն կենդանի տեսնելը սթափեցրին նրան։ Բայց և այնպէս՝ յուզուած մայրը չկարողացաւ իր զայրոյթը զսպել, մի երկու ապտակ զարկեց առանց այն էլ ցաւից մոր-մռքող երեխային։

—Ինչո՞ւ էք, քոյրիկ, ապտակում, — մեղմօրէն նկատեց Անդրէասը։

—Այս անիծուածին հազար անգամ ասել եմ, որ ձիաւորների, սայլերի ետևից չվազի, բայց դարձեալ չի լսում։

—Ի՞նչ կայ որ, երեխայ է. տեսնում է՝ ընկերներն անում են, ինքն էլ անում է։

—Երեխայ չէ, ցաւ ու չոռ է իմ ջանի համար։ Կեանքս դրեցի դրա վրայ, բայց դարձեալ մի հանգիստ րոպէ չունեմ։ Դէհ, շուտ կորի՛, եթէ ոչ՝ հոգիդ կառնեմ։ Շո՛ւտ, ասում եմ։

—Վա՜յ, վա՜յ, ոտս ցաւում է, ման գալ չեմ կարող։

—Տեղն է. գլուխդ էլ պիտի կոտրուէր, որ դու միւս անգամ խրատուես։

Նոյն րոպէին Անդրէասը գրկեց երեխային և մօր օգնութեամբ տարաւ նրանց մերձակայ բնակարանը։ Փոքրիկին մօրը խնամքին յանձնելով, ասաց նրան.

—Մի՛ լար, վաղը այգուց վերադառնալիս՝ քեզ համար շատ տանձ, խնձոր կը բերեմ։

Մօրն էլ ասաց.

—Մի՛ նեղացէք, երեխայ է, ներողամիտ եղէք, մանաւանդ առանձին վտանգ չկայ. մի քիչ ոտքի կաշին է քերթուել, ուրիշ ոչինչ։

—Շատ շնորհակալ եմ ձեզնից,—երախտագիտութեամբ լի և մի առանձին քաղցր հայեացքով ասաց հանգստացած մայրը։

Այդ հայեացքը անտես չմնաց Անդրէասից։ Երիտասարդի մարմնով մի սարսուռ անցաւ։ Նա նոր նկատեց, որ հնամաշ շորերի տակ թագնուած է մի երիտասարդ գեղեցկուհի։ Նա զգաց, որ իր առաջ կանգնած է մի կին, որին կարելի է սիրել, նուիրուել։ Անդրէասը, որ կարեկցողի սրտով էր մտել ներս, յաղթահարուած սրտով դուրս եկաւ չքաւորի շեմքից։ Նա նստաւ իր սայլը և մի քանի ամուր հարուածներ տալով ձիուն՝ անյայտացաւ արդէն գիշերային մթութեան մէջ։ Բայց դրանով Անդրէասի սիրտը չհանգստացաւ։ Նա իր սրտի կէսը այնտեղ էր թողել։

---

II

Անդրէասը հասարակ մարդու որդի էր, բաւականին հարուստ։ Նրանք չորս եղբայր էին, տների, խանութի, այգու սեփականատէր։ Անդրէասը զինուորական ծառայութիւնը նոր էր վերջացրել։ Առողջ, կարմիր, բարձրահասակ, տղամարդուն յատուկ գեղեցկութիւններով օժտուած։ Դեռ Նա իր համար որոշ պարապմունք չէր ընտրել։ Առժամանակ ամենայն օր այգի էր գնում, վերահսկում էր մշակներին և առհասարակ այգեգործական աշխատանքներին։ Սրա հետ միասին և ապրել էր ուզում Նա։ Այն ձգտումները, ինչ որ զինուորական կեանքի խստութիւնները մի քանի տարի զսպել էին Նրա մէջ, այժմ ազատ, ինքնուրոյն դրութիւնը թելադրում էր Նրան՝ կեանքից կրկնապատիկը ստանալ, ճաշակել կեանքի զգայական քաղցրութիւնը, որից տարիներով զրկուած էր Նա։ Բաւական էր Նրա առաջին քայլափոխում մի կին պատահէր, որ մի չքնաղ հայեացքով տիրէր Նրան։ Եւ իսկապէս՝ Անդրէասը այդ երեկոյից յետոյ իր սրտի գերին դարձաւ։

Տուն դառնալով, Նա եղբայրներին պատմեց տեղի ունեցած անցքի մասին։ Հարց ու փորձ արեց մշակ Մառալի մասին, բայց ոչ մի բաւարարութիւն չստացաւ. եղբայրներն իրանց գործերով զբաղուած լինելով՝ անուշադիր եղան Անդրէասի ասածներին, և այդ աւելի ևս աղմկեց Անդրէասի սիրտը։ Պարզ է։ Ումով հետաքրքրվում ես, ցանկանում ես, որ ամենքը Նրան ճանաչեն, ամբողջ ժամանակ Նրա մասին խօսեն, Նրա մասին լսես, Նրա մասին մանրամասնութիւններ իմանաս։ Սակայն Անդրէասը ոչինչ չկարողացաւ լսել իրան հետաքրքրող առարկայի մասին և վաղուան օրուայ յուսով՝ շուտ քուն մտաւ։

Հետևեալ օրուայ երեկոյեանն էր։ Մառալենց դռանը

մի սպիտակաձի սայլակ կանգ առաւ։ Երիտասարդ վարողը կտրճի ճարպկութեամբ ցած թռաւ սայլից՝ ծանրաբեռնուած կողովով, որ լիքն էր տեսակ տեսակ քաղցրաճաշակ տանձերով, խնձորներով։ Դա Անդրէասն էր, որ այցելութեան էր գալիս իր փոքրիկ հիւանդին և շտապել էր կատարել իր նախընթաց օրուայ խոստումը։ Բայց ամենից աւելի նրան ձգում էր մի այլ զգացմունք, որ զարթել էր նրա մէջ և հանգստութիւն չէր տալիս նրան։

Շեմքի առաջ հանդիպեց նրան երէկուայ կինը, այս անգամ աւելի վայելուչ զգեստով։ Այդ հանգամանքը զգալ տուեց Անդրէասին, որ իրան սպասում էին։ Այդ րոպէին մի թեթև ջերմութիւն թառեց նրա երիտասարդական այտերին և կարմրագոյն ներկելով նրանց՝ սահեց-անցաւ դէպի վեր, դէպի գլուխը՝ թեթև կերպով շփոթեցնելու նրան։ Բայց Անդրէասը զսպեց իր յուզմունքը և, բորբոքուած աչքերը ցած թեքելով, հարցրեց.

—Ի՞նչպէս է փոքրիկը։

—Լաւ, շատ լաւ է,—քաղցր ժպիտով պատասխանեց մայրը։—Շնորհակալ եմ, որ նրան հարցնում էք։

—Ո՞ւր է նա։ Նրա համար բերել եմ այն, ինչ որ նրա հիւանդութեան պատճառը եղաւ։ Այդ շատ լաւ դեղ է. կընդունի, կառողջանայ։

Այդպէս խօսելով՝ ներս մտաւ նա աղքատիկ խրճիթը։

Սենեակում նոր էին վառել ճրագը։

Երեխան վաղուց մոռացել էր իր ցաւը և երբ նկատեց անուշահամ պտուղներով լի կողովը, ուրախութիւնից ցնծալի ճիչ արձակեց։

—Հէ՛ր, առողջացի՛ր և խելօք կաց։ Մայրիկիդ մի՛ նեղացնի. խոստանում եմ քեզ համար ամեն երեկոյ պտուղներ բերել, — ասաց Անդրէասը՝ դնելով նրա առաջ լի կողովը։

Մինչդեռ մայրը կողովից պտուղներ էր հանում

երեխային տալու, Անդրէասը աչքերի արագ հայեացքով քննեց իր շրջապատը։ Նա զգաց, որ այդ թշուառութեան որջում չքաւորութիւնը ամեն իրի վրայ դրոշմել է իր խոր կնիքը։ Յատակը տախտակամածից զուրկ, պատերը ծեփած միայն ցեխով, որը խոնաւութիւնից արդէն ներքևի մասերում ցած էր թափուել, չնայելով տանտիկնոջ ստէպ ծեփելուն։ Պատերի տակ շարուած էին մի քանի հատ փայտէ հնացած աթոռներ, որոնք իրարից տարբերվում էին գոյնով, ձևով, մեծութեամբ։ Տախտը ծածկուած էր հնամաշ փալասով, որի վրայ պատերի տակ ձգուած էին խունացած երեսներով երկար մինդարներ և մի անկիւնում խնամքով հաւաքուած էր ծալքը։ Այդ էր սենեակի ամբողջ կահաւորութիւնն ու զարդարանքը։ Բայց և այնպէս այդ աղքատիկ բնակարանում նկատվում էր կարգ, կանոն և տանտիկնոջ հոգատար ու աշխատասէր ձեռքի ներկայութիւնը։

Անդրէասը կամենալով տանտիկնոջ հետ ընդհատուած խօսակցութիւնը նորոգել՝ աչքերը հազիւ բարձրացնելով սկսեց եղանակից և անցաւ խրճթի դրութեանը։

—Այս բնակարանը քանիսո՞վ էք վարձել։

—2 րուբլով,—պատասխանեց տանտիկինը։

—Այդ էլ չարժէ։

—Մեզ համար բաւական է։

—Մի՞թէ այս բնակարանով դուք բաւական էք։ Տեսէք, թէ ինչ խոնաւութիւն կայ պատերի մէջ։ Վերջապէս մի՞թէ ափսոս չէք դուք, որ մի այսպիսի խոնաւ բնակարանումն էք ապրում,—ասաց Անդրէասը այլևս չկարողանալով իրան զսպել։

—Ի՞նչ անենք, որ չբաւականանանք, — ասաց տանտիկինը, ամօթից հազիւ բարձրացնելով իր սիրուն աչքերը։

—Վարձեցէք աւելի լաւ, չոր բնակարան։

—Ի՞նչ միջոցներով։ Ամուսինս մշակ է։ Ամբողջ շաբաթ այգիներում չարչարվում է, տանջվում և 4—5

րուբլի է ստանում։ Դրանով ի՞նչպէս կառավարուենք, և ուտենք և հագնուենք և լաւ բնակարանում ապրենք։ Որ բոլոր չքաւորները լաւ բնակարաններում ապրեն, այն ժամանակ հարուստները բնակարան չեն գտնի։ Է՛հ, Աստուած ամեն լաւ բան հարուստներին է տուել, իսկ ամեն տանջանք, ցաւ, կսկիծ՝ մեզ պէս թշուառներին։

—Տասը հարստի հետ չեմ փոխի քեզ,—յանկարծ դուրս թռաւ բորբոքուած Անդրէասի բերանից։

—Խնդրում եմ քաղաքավարի խօսէք, լողն ի՞նչ կասի,—վերաւորուած ձևացաւ տանտիկինը։

Անդրէասը զգաց իր սխալը, իսկոյն խօսակցութեանը լուրջ ձև տուեց։

--Իսկ եթէ ձեզ համար մի լաւ, չոր բնակարան վարձեմ, դուք կը համաձայնուէ՞ք։

—Այդ իմ գործը չէ, ամուսինս գիտէ,—սառնութեամբ արտասանեց տանտիկինը։

—Ուզում եմ ձեզ մի բարութիւն անել։ Տիկի՛ն, ձեր դրութիւնն ինձ կապեց ձեր տան հետ։ Դէ՛հասացէք, կը համաձայնուէ՞ք այս բնակարանից դուրս գալ։

—Ոչ մի դրական պատասխան չեմ կարող տալ․ եթէ ցանկանում էք, ամուսնուս հետ խօսեցէք․ Նրա կամքին հակառակ չեմ գնայ։

—Իսկ կը ցանկանայի՞ք, որ մեր բնակարանները մօտ լինէին, իրար մօտ ապրէինք։ Իմ կողմից ես շատ եմ ցանկանում այդ։ Միշտ կօգնեմ ձեզ։ Ձեր ծանր դրութիւնը կը թեթևացնեմ։ Մի՞թէ դուք ափսոս չէք, այդպէս երիտասարդ, գեղեցիկ և պէտք է այդ անյայտութեան ու չքաւորութեան մէջ կորչէք։

—Ինչու՞ չէ․ լաւ բան ո՞վ չի ցանկանայ։ Ո՞վ կուզէ, որ իր աչքը կոյր լինի։ Ես էլ կուզէի այս դառնութիւններով լի կեանքից ազատուել և մի քիչ հանգիստ շունչ քաշել, բայց խեղճ մշակին, նրա ընտանիքին ո՞վ կը տայ այդ երջանկութիւնը,—հառաչեց կինը և գունատուելով ու նորից գոյն տալով՝ աւելացրեց․—բայց դարձեալ

*կրկնում եմ, որ ամուսնուցս է կախուած. խօսեցէք նրա հետ. իմ ցանկութիւնը այդ խնդրում շատ քիչ նշանակութիւն ունի։*

*—Իսկ ինձ համար շատ մեծ նշանակութիւն ունի։ Միայն ձեր համաձայնութիւնը, և բաւական է. այնուհետև ձեզ այդ դրութիւնից ազատելու համար պատրաստ եմ ամեն միջոց գործ դնել։ Հաւատացէք, ոչինչ չեմ խնայի։*

*—Այո, ես համաձայն եմ։ Ուզում եմ կեանքի դառնութիւնը ճաշակելուց յետոյ՝ և՛ նրա քաղցրութիւնը հասկանալ. այո, ազատուել այդ մաշող, անհետաքրքրական կեանքից, բայց, դարձեալ կրկնում եմ, առանց ամուսնուս ես ոչ մի խօսք չեմ կարող տալ ձեզ։ Ամեն բան նրանից է կախուած. նա է մեզ կերակրողը, մեր տէրը։*

*Այդ րօպէին նրանց երկսի հայեացքներն իրար հանդիպեցին։ Կրակոտ, այրող, տանջալից էին այդ հայեացքները։ Նրանք նայուածքների համր լեզուով իրար շատ բան ասացին։ Ապրելու ձգտող այդ երկու սրտերը շատ լաւ հասկացան իրար։*

*Անդրէասը զգաց, որ յաղթանակը իրանն է։ Մեծ հաճոյք զգաց, երբ համակրելի կնոջ բերանից դուրս կորզեց՝ «Ես էլ ուզում եմ ազատուել, ես էլ ուզում եմ կեանքի քաղցրութիւնը հասկանալ» խօսքերը։ Այդ նշանակում էր, որ աջողութեան կէսին հասել է, ուստի խօսքի շարունակութիւնը մի այլ անգամուան թողնելով՝ բարի գիշեր մաղթեց տանտիկնոջն ու դուրս եկաւ տնից։*

*Այնուհետև Անդրէասի սպիտակաձի սայլակը ամեն երեկոյ կանգնում էր մշակ Մառալի դռանը, և երիտասարդ սայլավարը պտուղներով բեռնաւորուած կողովը ձեռին անյայտանում էր դռների ետև։ Այդպէս շարունակուեց շաբաթներ։ Սպիտակաձի սայլակը և նրա առաջ վարիչը կամաց կամաց կասկածների առիթ*

տուեցին։ Սկզբում հարևանները և յետոյ ամբողջ թաղը,
որ «Եաման-աւուլ» էր կոչվում, սկսեց խօսել Անդ-
րէասի տարաժամ այցելութիւնների մասին։ Կասկած-
ները ևս հաստատուեցին, երբ Մառալի երեխայի հա-
գին նոր շորեր, նոր կօշիկներ նկատեցին և մանաւանդ
երբ տեսան, որ Անդրէասի սայլակը կանգ է առնում
Մառալի դռանը ամեն երեկոյ, բացառութեամբ շաբաթ
երեկոներից, երբ Մառալը այգու աշխատանքներից
տուն էր դառնում։ Անդրէասի սայլակը այնքան ընդհա-
նուր հռչակ էր ստացել, որ իւրաքանչիւր այգի գնա-
ցող, դարձող երբ նկատում էր նրան Մառալի դռանը,
իր տեսակի սրախօսութիւն էր անում ու անցնում։
«Խեղճ ձի, ինչ մեղք ունես, որ առանց ուտել խմելու
ժամերով կանգնում ես»։ «Տղէրք, Անդրէասը հիւանդ-
տես է եկել»։ Կամ ասում էին՝ «Անդրէասի ձին սաղմոս
է քաղում» և այլն։ Իսկ մի քանի յանդուգններն աւելի
առաջ էին գնում, ասելով՝ «Խեղճ Մառալ, դու գործի
ծանրութեան տակ չարչարվում, տանջվում ես, կինդ
ջահել տղերանց հետ քէֆ է քաշում», կամ՝ «Դու մի
կօպէկի համար հարիւր անգամ արիւն-քրտինք ես թա-
փում, կինդ՝ առանց քրտինք թափելու է աշխատում»...

III

Շաբաթ երեկոյ էր։ Այգիներից դէպի Մառալենց
բնակարանի կողմն էր դիմում մի մշակ։ Նա ամբող-
ջապէս փոշու և քրտնքի մէջ կորած էր։ Նրա արևառ
դէմքը, ալեխառն երկար միրուքը, դէմքի անժամանակ-
եայ կնճիռները, դէպի կուրծքը խոնարհած գլուխը և
մէջքի կորութիւնը ցոյց էին տալիս, որ ծանր, երկա-
րատև աշխատութիւնը իր մաշող, քայքայող հետքերը
թողել էր այդ յաղթանդամ տղամարդու վրայ։ Դա
Ֆարայէլենց Աղօն էր, որի մականունը Մառալ էր։ Նա

վերադառնում էր այգիներում աշխատելուց։

Աղօյի վերադարձը այս անգամ ընդհանուր հետա-քրքրութիւն պատճառեց հարևաններին։ Նրա ետևից բացվում էին պատուհաններ, դռներ, ուր երևում էին կանացի հետաքրքիր գլուխներ՝ կասկածաւոր ժպիտներն երեսին և մի առանձին անհամբերութեամբ դիտում էին Մառալի տուն մտնելը ու գլխի շարժումներով իրար նշաններ էին անում, քչփչում էին։ Բոլոր հարևանները մի անսովոր արկած էին սպասում։ Մառալին իրան ևս անսովոր երևաց սպիտակաձի սայլակը, որ սպասում էր իր դռանը։ Գլուխը բարձրացրեց, առանձին հետաքրքր-րութեամբ դիտեց սայլակը, ձին, ոչինչ չհասկացաւ, ներս մտաւ։ Տան շեմքում նրան հանդիպեց կինը, այս անգամ կոկուած, նոր շորեր հագին։

—Հը՜, ի՞նչ կայ. հիւրեր ունե՞ս,—յօնքերը կիտելով հարցրեց Մառալը։

—Շաբաթ երեկոյ է. եկեղեցի էի գնացել, վերադարձայ. հէնց ուզում էի շորերս փոխել, ինչ-որ մի անծանօթ պարոն ներս մտաւ ու քեզ է հարցնում. նա դեռ ներսն է, քեզ է սպասում։

—Ո՞վ է։

—Չգիտեմ։

—Ի՞նչ է կամենում։

—Նոյնպէս չգիտեմ։

—Լաւ, տեսնենք։

Մառալի ներս մտնելուն պէս՝ Անդրէասը ոտքի կանգնեց և ժպտադէմ բարևեց նրան։

—Ի՞նչ ուշացար. բաւական ժամանակ է՝ քեզ եմ սպասում։

—Ես ի՞նչ սպասելու մարդ եմ։

—Ինչո՞ւ, ումի՞ց ես պակաս։

—Շատերից։ Ես աղքատ, անփող մարդ եմ։ Ես մի ոչնչութիւն եմ։

—Ընդհակառակը. քանի որ դու աշխատաւոր մարդ ես, ոչնչութիւն չես։

—Քանի՞ կոպէկ արժէ իմ աշխատանքը։ Ես վաստակում եմ, ուրիշն ուտում է։ Ասած է՝ «էշը դատում է, ձին ուտում»։ Քանդուի այսպիսի աշխարհը։

—Ինչո՞ւ ես տաքանում։ Բաւական է, որ ազնիւ, ճշմարիտ լինես, կտոր հացդ միշտ էլ կը գտնես և աշխատանքդ միշտ կը գնահատուի։

—Այժմ գնահատութիւն չկայ, քանի որ ազնուութեան և ճշմարտութեան կշեռքը մեր աղաների ձեռքումն է։ Նրանցից է կախուած մեր կեանքն ու մահը։ Ինչ կամենում են, նրանք անում են։ Կողոպտում են, խաբում, օրը ցերեկով՝ աւազակի նման՝ հագիդ շորերը հանում են, գրպանդ դատարկում, և արգելող չկայ։ Բողոքում ես, դարձեալ նրանք են արդար, լաւ, իրաւացի, ազնիւ, որովհետև փող ունեն։ Փողը մի դիւթական վերմակ է, որ իր տակ ծածկում է ամեն մի անարդարութիւն և յանցանք։

—Եղբա՛յր, ի՞նչ ունես աղաների հետ. արի՛ մեր գործի մասին խօսենք։

—Ինչ ունե՞մ։ Ո՞վ հասցրեց ինձ այս դրութեան։ Ո՞վ գլորեց ինձ չքաւորութեան անդունդը։ Ո՞վ ընտանիքիս վերջին հացի պատառը խլեց, եթէ ոչ աղան։ Դու գիտե՞ս, թէ ես ի՞նչ մարդ էի։ Ապահովուած այգեպան էի։ Այդիգ-Օրամում ամենալաւ այգին ունէի։ Ամսական 50 րուբլով էլ վարձուել էի այն տուն քանդուելու Գասպար աղայի մօտ՝ որպէս գլխաւոր կառավարիչ նրա այգիների։ Չգիտեմ, այն անիծուածը ինչ հաշիւ ունէր Ելդեմուրենց Օսիի հետ, ինձ կանչեց ու ծածուկ ասաց. «Այս գիշեր ժամը 12-ից անց՝ կը վերցնես մեր հաւատարիմ լեռնական ծառաներից երկուսին, և ամենայն զգուշութեամբ կերթաք Ելդեմուրենց այգին, կը մտնէք նրա ամբարը և սպիրտով լի բոլոր տակառները կը ջարդէք ու թանգագին հեղուկը դուրս կը

թափէք։ Ուղեղս ցնդուեց անսիրտ հրամանից։ Ես հրաժարուեցի անարդար գործ կատարել։ Միւս օրն արդէն տեղից դրկուած էի։ Այդ դեռ քիչ է, այդ՝ գողերի թագաւորը քաղաքում անունս հողի հետ հաւասարեցրեց, տարածելով որ գողութեան համար է ինձ արձակել։ Մի անգամ անունս կոտրուեց, էլ ոչ ոք այնուհետև չվարձեց ինձ։ Աւելին ասեմ. այգիս կառավարելու համար այդ գազանից մուրհակով 300 րուբլի էի վերցրել։ Հակառակի նման՝ այդ տարին այգիս էլ արդիւնք չտուեց, չկարողացայ պարտքս ժամանակին վերադարձնել։ Մեր յարաբերութիւնները արուելուց յետոյ՝ Գասպար աղան մի գեղեցիկ օր մարդիկ ուղարկեց այգուս, տանս իրերը, մինչև անգամ կնոջս արծաթեղէնը, ոսկէ զարդերը, բոլորը գրել տուեց և շուկայում աճուրդով ծախեց։ Միջնորդներ ուղարկեցի։ Կինս անձամբ գնաց գթութիւն հայցելու. չէ՛ ու չէ՛։ Ոչ մի աղաչանք, ոչ մի արտասուք չկարողացան փափկեցնել նրա ապառաժ սիրտը. Նա անողոք մնաց։ Ահա՛ քեզ այժմեան ազնուութիւնն ու արդարութիւնը։

—Այդ բոլորը լաւ գիտեմ, դրա համար էլ եկել եմ քեզ օգտակար լինելու։

— Ո՞վ. դո՞ւ։ Դու էլ դրանցից մէկն ես։

—Հաւատա՛ ինձ, կարող եմ բարուոքել դրութիւնդ։

—Հէնց սրա համար էլ ասում եմ, որ դու էլ այդ աղաներից մէկն ես։ Այսօր ցանկանում ես բարելաւել դրութիւնս, որովհետև ինձնից երևի օգուտ ես սպասում։ Վաղը, սարդի նման արիւնս ծծելուց յետոյ, որպէս անպէտք իր փողոց կը շպրտես։ Այո՛, դու էլ նոյնն ես, որովհետև հարուստ ես։ Քեզ ու եղբայրներիդ լաւ եմ ճանաչում,—տաքացած բացագանչեց Մառալը։

—Լսի՛ր, մի՛ տաքացիր։ Նստի՛ր, տես ի՛նչ եմ ասում։ Նոր այգի ենք գնել։ Մեզ մի հմուտ այգեպան է հարկաւոր։ Եղբայրներս քեզ ճանաչում են որպէս փորձուած, այգու գործը հասկացող մարդ։ Արի՛ վարձուիր մեզ մօտ։

—Ո՛չ, ձեզ չեմ կամենում ծառայել. դուք գին չէք տայ ինձ։

—Գին էլ կը տանք, միևնոյն ժամանակ և կաշխատենք քեզ համար ամէն յարմարութիւն ստեղծել ու ազատութիւն տալ քո գործունէութեանը։ Այգու տէրը դու կը լինես. միայն մի պայման։

—Պայման-մայման ես չեմ հասկանում,—Անդրէասի խօսքը կտրեց Մառալը. առանց որևէ պայմանի. դրա համար էլ ասացի, որ ձեզ չեմ ուզում ծառայել։

—Դեռ պայմանս լսի՛ր, յետոյ դատի՛ր։

—Քանի որ պայման կայ, ճնշում կայ։ Գասպար աղայի նման պայման կը դնէք խղճիս հակառակ գնալ։ Ես ձեր կեղծ ու շինծու պայմանները գիտեմ։ Ո՛չ, ես ձեր կարծածներից չեմ, ես ազնիւ մարդ եմ և այդ ազնւութեանս էլ այսօր զոհ եմ գնացել։ Այո՛, ազնիւ, ազնիւ պէտք է լինել, և այդ դասը ինձ մայր հողն է տուել,—ձայնը աստիճանաբար բարձրացնելով բացագանչեց Մառալը և շարունակեց.—ես հողագործ եմ, և ոչ մի պարապմունք այնքան ազնիւ, արդար չէ, որքան հողագործութիւնը։ Կտոր հացս ես ուղիղ հողից եմ ստանում, և ահա՛ այս բազուկներիս միջոցով, այլ ոչ թէ զանազան կեղծ պայմաններով ու խաբեբայ ճանապարհներով։ Չէ՛, եղբայր, մենք իրար յարմար չենք։

—Մեզ էլ քեզ նման ազնիւ մարդ է հարկաւոր. միայն լսի՛ր պայմանս. մէջը ոչ մի կեղծիք, ստութիւն չկայ։ Մեր պայմանն այն է, որ դու քաղաքում չապրես, այլ ընտանիքովդ տեղափոխուես մեր այգին։ Դու կունենաս ամենայարմար բնակարան, վառելիք, ծառայ և օգնական։ Մի խօսքով՝ մենք ուզում ենք, որ մեր այգում մի մշտական տէր, մի վերահսկող աչք լինի։ Այժմ մնում է վարձատրութեանդ չափը, այն էլ դո՛ւ ասա։

Առաջարկուած պայմանները խիստ յարմար էին Մառալի համար։ Մանաւանդ նա ի նկատ ունէր այն հանգամանքը, որ ձմեռը այգիներում աշխատանքը դա-

դարելուց յետոյ՝ ինքը անգործ պիտի մնար, և ամբողջ ձմեռուայ ընթացքում ինքը, ընտանիքը սառնամանիքի և չքաւորութեան սոսկալի տառապանքներին չէին մատնուի։ Թէպէտ ծանր էր նրա ընտանիքի համար ամբողջ ժամանակ այգում ապրել՝ հեռու քաղաքից, բարեկամներից, բայց ի՞նչ արած, ստիպուած էր այդ պայմանն ընդունել, որովհետև նոյն հացի խնդիրը, նոյն թշուառ գոյութիւնը պահպանելու հարցն էր առաջ գալիս ու թունաւորում նրան։

«Կէս տարի այգիներում չոր հաց ուտել, խոնաւ գետնի վրայ քնել ու կէս տարի էլ անգործ մնալ, սովի ենթարկուել ձմեռը՝ այդ ոյժերիցս վեր է,—մտածում էր Մառալը.—գոնէ այգում ընտանիքս հանգիստ կը լինի, ուտելիքի կարօտութիւն չի ունենայ, եմիշը բօլ, օդն ու ջուրը լաւ, ես էլ միշտ մօտները կը լինեմ. ոչ ես, ոչ էլ նրանք կարօտութիւն կը քաշենք ու կը մտածենք իրար մասին»։

Այսպէս՝ Մառալը սենեակում մի քանի րոպէ լուռ անցուդարձ անելուց յետոյ՝ կտրուկ ասաց.

—Լաւ, համաձայն եմ ծառայել ձեզ, միայն իմ գործում ոչ ոք չպիտի խառնուի։ Վարձատրութիւնս էլ ամսական 50 րուբլի է։

Անդրէասը իր բերկրանքն ու հեռաւոր նպատակները ծածկելու համար խորամանկ ձևացաւ. Մառալին իսկոյն չյայտնեց իր համաձայնութիւնը, այլ, ձգձգելով, ասաց.

—Շատ ես ուզում։ Արի 30 րուբլով համաձայնուիր։

—50 րուբլուց ոչ մի գրօշ պակաս։

—Դէհ լաւ. եղբայրներիս հետ կը խօսեմ և մեր վերջնական որոշումը կը հաղորդեմ քեզ,—ասաց Անդրէասը և դուրս եկաւ խրճթից։

Նա հարցնելու ոչինչ չունէր։ Մառալը եթէ աւելի շատ վարձ պահանջէր, Անդրէասը պատրաստ էր տալ, միայն թէ՝ իր նպատակին հասնէր։

(Վերջը միւս անգամ)

ԳԷՈՐԳ քահ. ՄԿՐՏՈՒՄԵԱՆ

ճիկ էր ստանում գործարանում, շաբաթական տասը մանէթ, և գրել-կարդալ գիտէր, խօսում էր ռուսերէն, մանաւանդ երբ թաղային ոստիկանը մի թուղթ ձեռքին գալիս էր ոստիկանատնից, թէ թաղապետը կանչում է Սանդրօյին թէ Դարչօյին այս-ինչ գործի համար, կամ դատարանից են պահանջում Սերգօյին կամ Միսակին. նամանաւանդ երբ գործը վերաբերում էր զինուորագրութեան, մանրամասնութիւնները իմանալու համար միշտ դէպի Մարթա-դէդիին էին դիմում, և Մարթա-դէդին «Դաւիթ ջան», «Դաւիթ ջան» ասելով՝ իմանում էր նրա կարծիքները, մի քանի բան էլ ինքն էր աւելացնում ու հարեւանների ծարաւը յագեցնում։

Երբեմն, կիրակի կամ տօն օրերին, եթէ մի որևէ գործով անհրաժեշտ էր համարվում Դաւիթի բացատրութիւնը, ոստիկանատնից ոստիկանը թուղթն ուղղակի բերում էր Մարթա-դէդիի մօտ։ Եւ ոստիկանը շատ լաւ գիտէր, որ այդ ժամանակ Դաւիթը տանն է լինելու։ Եւ հէնց նրա ուզածն էլ այդ էր։ Կը մտնէր տուն, ձեռքը կը դնէր գլխարկի ծայրին ու, բարի լոյս մաղթելով Մարթա-դէդիին, իսկոյն ցոյց կը տար ձեռքի թուղթը։ Մարթա-դէդին կը հասկանար բանն ինչումն է։

—Հա, հա, տանն է Դաւիթը, արի, արի, հողեմ գլուխդ, —կասէր Մարթա-դէդին ու, դառնալով դէպի Դաւիթը, կը բացականչէր.—Դաւիթ ջան, ռուսօդ էկել ա, վեր կաց։

Հէնց Դաւիթի ուզածն էլ այդ էր։ Նա իսկոյն տեղից վեր կը կենար, կը դիմաւորէր ոստիկանին, կառնէր նրա ձեռքից թուղթը ու, հրաւիրելով, կը նստացնէր ոստիկանին կողքին և կը դառնար մօրը.

—Դէ, դէդի ջան, մի բան բէ ուտենք, մեր Իվանին պատուենք, լաւ մարդ ա, դէ պօլիցի մարդ ա, ո՞վ գիդի ինչ կարող է պատահել, դէ սա պօլիցի մարդ ա, մեզ պէտք կը գայ...

Մարթա-դէդին շատ լաւ գիտէր թէ ոստիկանի, թէ Դաւիթի փորի ցաւը, «բայց, դէ, աշխարք է, ո՞վ գիտէ ինչ կարող է պատահել, պօլիցի մարդ է, պէտք կը գայ» մտածում էր Մարթա-դէդին ու իսկոյն սեղան էր պատրաստում։ Բերում էր կարմիր կամ սպիտակ գինի, հաց, պանիր, թթու, կանաչի, դէ ինչ որ Աստուած տուել է, ու տախտի տակից հանելով երէկուանից մնացած բաստուրման՝ շամփուրները պատրաստում ու, մի չալ կրակ վառելով, սկսում էր խորոված պատրաստել։ Դէ, ոստիկանը՝ հէնց որ խորովածի հոտը քիթը կընկնէր՝ իրան երևակայում էր եօթերորդ դրախտում... Բաժակ բաժակի խփելով՝ Դաւիթն ու ոստիկանը միմեանց կենացն էին խը-

մում ու միմիանց առողջութիւն, երկար կեանք մաղթում ու «դէդի ջան, դէդի ջան» ասելով վատնում էին Նոյի արդիւնաբերութիւնը։

Մի անգամ, քէֆի լաւ ժամանակ, ռուս ոստիկանը, կամենալով իր շնորհակալութիւնները յայտնել Մարթա-դէդիին, տեղից վեր կացաւ, առաւ գինու բաժակն ու, երկար կեանք, առողջութիւն մաղթելով, բռնեց Մարթա-դէդիի ձեռքը, որ համբուրէ. ձեռքը համբուրելու տեղ՝ Մարթա-դէդիի թուշը համբուրեց։

Վա՜յ, Դաւիթը շատ նեղացաւ։

—Դէ, հայրենակից, իմ մայրը քո մօր չափ է. այդ ի՞նչպէս է, որ համարձակուեցիր նրան անպատուել,—դարձաւ նա ոստիկանին։

Ոստիկանը հասկացաւ իր սխալը։

—Դէ, հայրենակից, ես... այնպէս... Մարթա-դէդիի ձեռքն էի ուզում համբուրել. դէ, սխալուեցի։ Էյ, դէդի ջան, ներողութիւն։

Ու Մարթա-դէդին մի քանի անգամ «հողեմ գլուխդ, հողեմ գլուխդ» ասելով՝ մի երկու բաժակ ճաճի արաղ գլխովը քաշեց ու ամեն բան բոլորովին մոռացաւ։

Իսկ Դաւիթն ու ոստիկանը առաջուայ պէս, միմեանց կենացը խմելով, «Դաւիթ ջան» ու «Իվան ջան», «հայրենակից» միմեանց անուանելով, կամաց-կամաց կանաչու հաշիւն էին տեսնում...

Ոստիկանը շատ լաւ գիտէր, որ Դաւիթն ո՛վ, ինքն ո՛վ, որ միմեանց հայրենակից են անուանում, բայց, «դէ,—մտածում էր նա,—սրանց սովորութիւնն է, երևի, այստեղ լաւ ծանօթներն էլ հայրենակիցներ են, նամանաւանդ, դէ, բոլոր մարդիկ էլ հողից են ստեղծուած...»։ Այդ այդպէս։

Հարևաններն այդ բոլորը գիտէին. գիտէին նոյնպէս, որ Դաւիթը շաբաթ գիշերներն ուշ էր տուն գալիս. «Էհ, ա՜յ կնիկ, Մարթա-դէդի ջան,—ասում էին,—ի՞նչ անենք, ջահել տղայ ա, ընգերներն են խաբար անում. պսակիր, մի ջահել աղջիկ ուզի, խելքի կը գայ, «տնով» կըլլի...»,—ասում էին միշտ Մարթա-դէդիին, երբ նա՝ մայրական համբերութիւնը հատած՝ սկսում էր արտասուք թափել ու անիծել իր Դաւիթ ջանին։ Թէև Դաւիթը շատ ծնողասէր էր, միայն «դիդի ջան, դէդի ջան» էր ասում, բայց դէ մի պակասութիւն ունէր, և այդ՝ շաբաթ գիշերներն ուշ տուն գալն էր. դէ ի՞նչ ծածկեմ, տուն գա՛լս որն է. նրան տուն էին բերում. ընկերները նրան կառք էին նստեցնում, մէ-

կը բռնում էր նրա աջ թևից, միւսը՝ ձախ թևից, ու բերում էին տուն... էլ ինչ Դաւիթ. որ մեռած ասեմ՝ մեռած չէր, որ սաղ ասեմ՝ սաղ չէր... Եւ ընկերները նրան կառքից իջեցնում, բերում էին տուն ու, «դէդի ջան, դէդի ջան» ասելով, Դաւիթին պառկեցնում էին, մի քանի ժամ կողքին նստում ու, Մարթա-դէդիից մի քանի անգամ ներողութիւն խնդրելով, գնում էին իրանց տները։ Դէ, Մարթա-դէդի, բերանդ բաց արա, աչքերդ խփիր, աշխարհում ինչ անէծք կայ՝ Դաւիթի գլխին թափիր... էլ «կինծակտոր ըլէս», էլ «դժոխքի փայ ըլէս», էլ «բէմուրազ գռնաս», էլ «փայտօնի տակն ըլես», էլ «բօյ ու բուսաթդ կուբօյում տեղաւորեմ», ու այսպէս անվերջ. և խեղճ Դաւիթը սառը ջրով կամաց կամաց ճակատը թրջելով՝ աչքերը մերթ բացում, մերթ փակում էր, ու... ոչ մի խօսք։ Իսկ երբ Մարթա-դէդիի անէծքների ծովը անվերջօրէն ալեկոծվում էր, Դաւիթը յոգնած նայում էր մօրն ու ժպտում. իսկ երբ խեղճի համբերութիւնը հատնում էր, ձեռքին բռնած դեղին բադրջանը տալիս էր մօրն ու բացականչում.

—Առ, դէդի ջան։

Եւ ժպտում էր։

Մարթա-դէդին կատաղում էր, վերցնում էր դեղին բադրջանն, ու տուր թէ կը տաս... Դաւիթի գլխովն էր տալիս՝ էս մէկ, էս էրկու, էս իրեք. խփում էր Դաւիթի գլխին ու խփում... բայց... Դաւիթը ոչ մի խօսք. նրանն այն էր, որ ժպտում էր ու նայում մօրը... Թէ Երուսաղէմից թիւրք գինուորի ձայնը կը հասնէ Մարթա-դէդիի ականջին, այդպէս էլ Դաւիթի ձայնը... Մարթա-դէդիին աւելի կատաղեցնում էր այն, որ Դաւիթը ինչքան էլ խմած լինէր, բայց իր մի սովորութիւնը երբեք մոռանալ չէր կարող։ Նրա ձեռքին միշտ մի դեղին բադրջան պէտք է լինէր։ Հանիր նրա շորերը, ոտքից-գլուխ մերկացրու, դատարկիր նրա գրպանները, խլիր նրա ոսկի գօտին, ժամացոյցը, շղթան՝ ոչ մի խօսք... Բայց... նրա ձեռքից խլիր դեղին բադրջանը... երբեք... Նա ամեն բան կը տար անտրտունջ, իսկ բադրջանը երբէք չէր տայ...

Հարևաններն այդ բոլորը գիտէին և այդ բադրջանի համար ասում էին.

—Է, է, Մարթա-դէդիի աժակը շատ է. նրա թալիսմաններն ու աղօթքներն են, որ Դաւիթին չարից ազատում են։

Եւ հաւատացնում էին, որ այդ դեղին բադրջանն ունի մի գաղտնի ոյժ, որը փրկում ու ազատում է նրան ամեն չարից ու չոռից... իբրև թէ նրա ձեռքին բադրջանը տեսնողը մի սար-

սուս է զգում, ու նրա ներքին աշխարհում ապրող չար դևը, մարդ-գազանը կորցնում է իր ոյժը... Թէ չէ՝ մինչև հիմա ո՞վ գիտէ որ քալ ու քոլում, չոլում ընկած լինէր Դաւիթը, սպանուած, խեղդուած, բայց... շորերը հանում, տանում էին փողը, գօտին, ամեն ինչ առնում, տանում էին, սակայն իր... մազին անգամ չէին դիպչում. և այդ հասկանալի բան էր, դեղին բադրջանի գերբնական ոյժն էր, որ փրկում էր Դաւիթի կեանքը ցաւից ու չոռից։ Ու այսպէս բացատրելով Մարթա-դէդիին, հարևանները խորհուրդ էին տալիս, որ շուտով Դաւիթին պսակէ, որ նա «տանու» լինի...

—Մի ջահել աղջիկ «ճտովն արա»,—ասում էին նրանք,— խելքի կը գայ...

Այդ ասում էին նրանք՝ միանգամայն մոռանալով որ թէ՛ նրա շորերը, թէ՛ փողը, թէ՛ գօտին, ժամացոյցն ու շղթան տանողները հէնց իր ընկերներն էին, որոնք նրան տուն էին բերում արբած։ Եւ պարզ բան է, որ աւելի լաւ էր նրանց համար ամիսը չորս շաբաթ Դաւիթի գրպանները մաքրել, քան սպանել մի օր ու մի անգամից վերջ տալ իրանց օգտակար գործունէութեան...

Հարևաններին այս բոլորը շատ լաւ յայտնի էր, բոլոր մանրամասնութիւններն իրանց ծանօթ էին... բայց այդու ամենայնիւ՝ Մարթա-դէդիի պատիւը բարձր էր հարևանների աչքում. նրան միշտ յարգում ու պատւում էին. նրան լսում էին, և միշտ մի առանձին ուշադրութեամբ որսում էին նրա ամեն մի խօսքը, որը վերաբերում էր հարևան-աղջիկներին։ Ձէ՞ որ Դաւիթը լաւ փեսացու է... Այդ այդպէս։

Եւ Մարթա-դէդին արդէն ընտելացել էր այդ բոլորին։

—Է՜, փուչ աշխարք,—ասում էր նա,—հալբաթ խելքի կը գայ։

Իսկ այժմ, երբ իր բարեկամ Ռիմսօն, որը ապրում էր մի քանի քայլ հեռաւորութեան վրայ, մի փոքրիկ սենեակում, վճռել էր հիւանդ որդուն տանել հիւանդանոց, Մարթա-դէդին իրան կորցրել էր։

—Ախր մարդ էլ գժուի, իրա տղայ երեխին տանի էն գէլանոցն անի՞... Ախր, էն ո՞վ ա գժուել, որ բալնիցում որդի թողնի...

Եւ Մարթա-դէդիի հետաքրքրութիւնը, եռանդը աւելի ու աւելի էին տաքանում, երբ նրա մտքովն անցնում էր այն, որ Ռիմսօն, «էն էլ խօ ուրիշ չէ, իրա քրոջ աղջիկն է, բարեկամ են, մի արին, մի ջան են»,—ասում էր Մարթա-դէդին

ու, գլուխը շարժելով, շուտ-շուտ ծնկներին հարուածներ էր տալիս, իր սրտի ցաւն ու դարդը պատմում էր Սօփօյին։

Եւ ճարահատեալ, երկար խօսելուց ու դատելուց յետոյ, երկու կինն էլ ուղղելով իրանց շորերը, գլուխներին «եարմուկումը» գնած կարմիր, սև, դեղին գոյներով մեծ-մեծ գլխի աղլուխները յարմարեցրին ու միաձայն վճռեցին գնալ Ռիմսօյի մօտ, խորհուրդ տալու որ «չգժուի, ու էրեխին բալնից չըտանի»։

Երբ երկու կինը ներս մտան, Ռիմսօն կանգնած էր թախտի առաջ, որի վրայ ցնցոտիների մէջ պառկած էր մի տասներեք տարեկան տղայ։ Երբ հիւրերը ներս մտան, տան դուռը ճռռաց. հիւանդը աչքերը բացեց, նայեց եկողներին, ու մի թեթև ժպիտ խաղաց փոքրիկի անգոյն, նիհար, ցաւից ու տանջանքից յոգնած դէմքին։ Հիւանդի ուրախութեանը չափ չկար, և այդ երևում էր նրանից, որ նրա թորշոմած դէմքին ու հանգած աչքերի մէջ յուսոյ մի պայծառ կայծ փայլեց։ Նրա առաջին հայեացքը դարձաւ ներս մտնող Մարթային, որովհետև հիւանդը շատ լաւ գիտէր, որ Մարթա-դէդին երբ գար, իրան համար անպատճառ մի բան կը բերէր։ Եւ երբ Մարթա-դէդին շալի տակից ձեռքը հանեց ու մի փոքրիկ թաշկինակի ծայրից բռնած մօտեցրեց հիւանդին, հիւանդը մի մեղմ ժպիտ արձակեց, ագահութեամբ իր թոյլ ձեռքերի արդէն ոսկրացած մատներով բռնեց այդ թաշկինակն ու անհամբերութեամբ բացեց։ Երկու թէ երեք խնձոր, մի նարինջ ու մի երկու ֆունտի չափ սպիտակ «բուլկի»։ Հիւանդը բռնեց «բուլկիի» ծայրից, մօտեցրեց բերանին. և դեռ ատամները կակուղ հացին չմօտեցրած, ձեռքերը թուլացան, հացը ձեռքից վայր ընկաւ, ու, աչքերը փակելով, մի թոյլ հոգոց հանեց և ենթարկուեց ինքնամոռացութեան։ Մայրը վրայ վազեց, բռնեց երեխայի թևից, նայեց նրա հանգած աչքերին։

—Ախր, խեղճը սաղ օրը բերանը մանանայ չի դրել, ջանիդ մեռնեմ,— բացագանչեց Ռիմսօն,—դէ, մի քիչ կաթ չկայ, որ խեղճ էրեխէն պռօշները թաց անի. ի՞նչ անեմ, Մարթա-դէդի ջան...։

Մարթա-դէդին մի հայեացք արձակեց Սօփօյի վրայ և, գրպանից հանելով մի կեղտոտ թաշկինակ, մի ձեռքով բռնեց թաշկինակի ծայրը, միւս ծայրը դրեց ատամների տակ ու մի շարժումով բացեց թաշկինակի կապուած ծայրը, այնտեղից հանեց մի պղնձեայ մեծ հինգ կօպէկանոց ու տալով Սօփօյին՝

—Մի կաթն առ, բէ,—ասաց Մարթա-դէդին ու նորից

կապելով Թաշկինակի ծայրը՝ դրեց գրպանը։

Սօփօն դուրս գնաց։ Մարթա-դէդին մօտենալով հիւանդին լուռ աչքերը ցած իջեցրեց ու գլուխը մի քանի անգամ շարժելով՝ դարձաւ Ռիմսօյին.

—Աղջի, ախր եկել եմ, որ մի աւետարան կարդամ գըլխիդ. դէ գէլի գլխին աւետարան կարդալը խօ մի բան չէ... Էդ երեխէդ մեխկ է, մի ճար արա, ճարը տես... Խօ տեսնում ես, խեղճ երեխէն հալուել ու մաշուել է...

Եւ Մարթա-դէդին մի առանձին շեշտով սկսեց պատմել կամացուկ իր գալու պատճառը։

—Զաւրսաղանաս, աղջի, Ռիմսօ, երեխիդ բալնիցա չտանես, չաւրսաղանաս...

Եւ մինչ Մարթա-դէդին պատրաստվում էր գայլի գլխին աւետարան կարդալու, դուռը կամաց-կամաց ճռռաց, ու Սօփօն մի պնակ ձեռքին ներս մտաւ մի այլ հարեւանուհու հետ։ Պնակը լի էր կաթով։ Ռիմսօն մի առանձին ոգեւորութեամբ առաւ պնակը, մի տասը թէ տասն-հինգ անգամ շնորհակալութիւն յայտնեց թէ կաթի փողը տուողին, թէ կաթը բերողին, և շտապեց կրակ պատրաստելու, որ կաթը տաքացնէ և «բուլկիով» խմացնէ հիւանդին։ Եւ երբ ամեն բան պատրաստ էր, Ռիմսօն, նստած՝ թախտի վրայ, փոքրիկ գդալը կամաց-կամաց մօտեցնում էր հիւանդի բերանին, իսկ հիւանդի գլխի ետեւից Մարթա-դէդին ձեռքը պինդ բռնած՝ հաւասարակշռութիւն էր պահպանում։

—Հա, դէ էլի ասում եմ,—վերջապէս, ընդհատելով տիրող լռութիւնը, դարձաւ Մարթա-դէդին,—բալնիցա չտանես, ու էտ շկօլի աշկերտներին չլսես հա՞. էս է որ էս, սրանց առաջն էլ եմ ասում, բալնիցա չտանես հա՞։ Ռիմսօ, խելքդ հացի հետ չուտես, ու էտ շկօլի աշկերտներին չլսես, երեխիդ բալնիցա չտանես։ Ես էլ մէր եմ, ես էլ որդիք եմ պահել, մենձացրել, հիւանդացել են, մրսել են, տաքութին են տուել, գիշերները չեմ քնել, գիշերը-ցերեկ եմ արել, ցերեկը գիշեր. դէ, մօր սիրտ ա, էլի՜..., տեսնո՞ւմ ես, ոնց մենձացրել եմ, ինչ բոյ-բուսաթի տղէք ունեմ։ Բալնիցէս ո՞րն ա, բանս ո՞րն ա...

Եւ Մարթա-դէդին մի առանձին ոգեւորութեամբ պատմում էր, թէ ինչպէս նա մեծացրել է իր Դաւիթին, Սերգօյին, Նատօյին... Եւ նրա խօսքերը, իւրաքանչիւր արտասանած բառը, իրանց մէջ կրում էին մայրական սիրոյ, գորովագութ սըրտի մեղեդիները...

—Լաւ եմ ասո՞ւմ, Ռիմսօ ջան, ո՞վ գիտի, երեխայ ա, էն

էլ տղայ էրեխայ. կը մենձանայ, ծերութեանդ ժամանակ քեզ պահողը, ըվ գիտի, դա ըլի, կը մեռնես էլ՝ էրեսիդ հողածողն էլ դա ըլի... Ծարը տես, ճարը... մեղք ա... բալնիցէն մոքիցդ հանիր. ա՜յ, շաբաթ օրը գնա, սուրբ-Գէորգի, սուրբ-Սարգսի առաջը չոքի, աղաչի-պաղատի, մում վառի...: Աստօձ մօր աղօթքը միշտ կը լսի... Իսկ կիրագի օրը ես էլ կը գամ, գնանք, էրեխին մի լաւ շալովդ փաթըթի, տանենք Խօջիվանք, ընդեղ. էն պամէտնիկից մի քիչ հեռու, էն խեղճ Գիգօլու գերեզմանն է, որ, Սօփօ ջան, դէ քու միտն ա, որ Գիգօլուն նահատակեցին...

—Ո՛նց չէ, ո՛նց չէ, Մարթա-դէդի, վա՜յ նրա սպանողների ջանը կրակ ընգնի, ի՜նչ տղայ սպանեցին, վա՜յ, վա՜յ... ազիզ պահած, ջահէլ-ջիվան տղա՜յ... Պսակի կարօտ թողին... վա՜յ կարօտ մնայ նրան սպանողների սիրտը. Աստօձ նրանց վրայ կըրակ ու հուր ածէ... Սար ու քոլ ընգնեն նրանք, ի՜նչ տղայ սպանեցի՜ն...

Ու Սօփօն փէշով սրբեց իր արտասուքը:

—Հա՛, Մարթա-դէդի, բա էն սպանողներին չգտա՞ն,—դարձաւ Սօփօն.—վայ երգնային կրակը նրանց վրայ թափի...

—Չէ, Սօփօ ջան, չէ, չգտան. ասում են՝ սարիցը հնգերներն են գլորել... Դէ, էն էի ասում. կիրագի առաւօտհան գընանք Խօջիվանք, էրեխին տանենք էն Գիգօլու գերեզմանի վըրայ, էրեխի ոտները լուանանք. շատ փորցած է, ասում են, վախիցը շատ դեղ անող է: Դէ նահատակի աղօթքը Աստօձ միշտ կը լսի: Հա, հէնց ինքը Արտուշը իրան ձեռով ճիճիլէն կը կտրի, ու սրտի վախը կը պրծնի. ասում են, ախր, փորցած բան ա, էլի՜, ա՜յ կնիկ... Դէ Արտուշի հիւանդութինն էլ վախիցն ա էլի՜... էրեխայ ա... այ կնիկ, չես հասկանում, բա՜ա...

—Դէ, Մարթա-դէդի, որ ասում ես, կիրագի օրը գնանք, տանենք. դէ, ախր, Մարթա-դէդի, էրեխէն շատ ա սուստ, որ Խօջիվանք տանենք, ախր կը մրսի...

—Աղջի՛, ի՞նչ ես ասում, շալումը մի լաւ կը փաթըթենք, մրսիլս ո՞րն ա...

Եւ միաձայն բոլորն էլ վճռեցին կիրակի օրը գնալ Խօջիվանք՝ նահատակուած Գիգօլի գերեզմանի վրայ հիւանդ Արտուշի ոտքերը լուանալու:

Կիրակի օրը բոլորն էլ պատրաստ, վաղ առաւօտեան, հաւաքուեցին Ռիմսօյենց տանը, մահուան ճանկերում արդէն կիսակենդան Արտուշին ձմեռուայ շալում մի լաւ փաթաթեցին, ու Ռիմսօն երկու ձեռքով բռնելով հիւանդին՝ գրկեց, ու բոլորն էլ ճանապարհ ընկան Խօջիվանքի գերեզմանատուն:

Ճանապարհին հիւանդին մերթ մայրը՝ Ռիմաօն էր տանում, մերթ Սօփօն, մերթ միւս հարևանուհին, մինչև հասան Խօջիվանք, գտան նահատակուած Գիգօլի գերեզմանը։ Շարուեցին այդ գերեզմանի շուրջը։ Եւ ինչքա՜ն կոտրատուած կաւեայ ամանների կտորներ էին թափուած այդ խեղճ գերեզմանի վրայ։ Սկսած՝ մեռելի գլխից մինչև ոտքը, աջ ու ձախ, հող չէր երևում։ Միմիայն երևում էին կոտրատուած կաւի ամանների կտորներ, որոնք յիշեցնում էին կաւեայ ամանների մի գործարան, որի մի անկիւնում միշտ թափուած են լինում ջարդուած ամանների ահագին կոյտեր։

Արտուշին նստեցրին մօտակայ մի քարի վրայ, ոտքերի կօշիկները, գուլպաները հանեցին, ու խեղճին ոտաբոբիկ, սառը գերեզմանի վրայ—որովհետև ձմեռ էր—երկու կին ձեռքերը և մէջքը բռնեցին, իսկ մայրը ոտքերին սառը ջուրը ածելով կաւեայ ամանից՝ լուաց հիւանդի ոտքերը, ապա մնացած ջուրը ածեց իր ձեռքի բուռը և այդ ջրով սրսկեց հիւանդի ճակատը, թաց ձեռքը մօտեցրեց նրա աչքերին, ապա այտերին, ու մնացած ջուրը ստիպեցին երեխային խմել։ Նա հնազանդուեց։ Առաւ կաւեայ ամանը, խմեց ջուրը։ Ապա Մարթադէդին տալով հիւանդին կաւեայ ամանը՝

—Արտուշ ջան, ա՜յ իմ խելօք, դէ, առ էս ամանը ու խփի քարին. թող ցաւդ ու չոռդ մնայ ըստեղ…,—ասաց։

Խեղճ Արտուշը դողդողում էր ցրտից. նրա թաց ու բոբիկ ոտքերի մատները կծկուել էին. նա առաւ կաւեայ ամանն ու, դեռ ձեռքը չառած, ձգեց վայր… Կաւեայ ամանը դիպաւ կաւեայ ամանների կտորտանքներին ու չկոտրուեց… Մարթադէդին այստեղ լեզուն կծեց։

—Վա՜յ, տունդ քանդուի, Ռիմաօ, էս լաւ չէր, որ չկոտրուեց։

Եւ բոլորն էլ հասկացան, որ դա լաւ նշան չէր…

Նորից տուին երեխայի ձեռքն այդ ամանը. նա վերցրեց, բայց նրա թոյլ ձեռքերում ամանը չէր պահվում… Ամանը նորից վայր ընկաւ, և մի փոքրիկ կտոր միայն պոկուեց ամանից ու ընկաւ նոյնպիսի ամանների անթիւ կտորների շարքը, աւելացնելով մի թիւ ժողովրդի տգիտութեան, խաւարի շարքում…

Երեխայի ոտքերը հագցրին ու ճանապարհ ընկան տուն։ Երեք թէ չորս օր էր անցել. երեխայի ցաւին աւելացել էր մի նոր ցաւ՝ հազը։ Բաւական չէր նրա տանջանքը, այժմ հազն էլ էր տանջում։ Եկաւ և տաքութիւնը։ Ամբողջ ժամերով զառանցում էր հիւանդը։ Նա աչքերը բացում էր, նայում շուրջը, մի

հոգոց հանում, ապա նորից փակում էր աչքերը, ենթարկվում էր ինքնամոռացութեան։

Վճռել էին դիմել այժմ գրբացին։ Մի թուրք մօլլա, ասում էին հարեւանները, լաւ գիր է անում։ Հիւանդի վզից գիրը կը կախեն, հիւանդը կը լաւանայ։

***

Զգիտեմ, գնացի՞ն թուրք մօլլայի մօտ թէ՞ ոչ, բայց այսքանը միայն իմացայ, որ երեխան սաստիկ տանջվում էր, նամանաւանդ կէս գիշերին, առանց այն էլ խոնաւ ու մութ սենեակում՝ նկուղում. երբ կէս գիշերուայ մութն էր կոխում, նա զառանցում էր, աչքերը յաճախ բացում ու դառնում մօրը.

—-Դէդի, ճրագը վառի, դէդի ջան, մութն ա, չեմ տեսնում, մի քիչ լուս արա, լուս, մութն ա...

Իսկ մայրը կողքին նստած, աչքերն ուռած՝ թէ արտասուքից, թէ անքնութիւնից՝ գլուխն օրօրում էր ու մտքում հաշւում, թէ տակաւին ո՞ր սրբի համար մոմ չէ վառել... Իսկ փոքրիկ լապտերի աղօտ լոյսը կամաց-կամաց մարում էր, թողնելով խաւարի մէջ երկու խաւար հոգի...

—Դէդի, մի քիչ լուս արա, լուս..., — զառանցում էր հիւանդը։

Իսկ առաւօտեան, երբ լապտերի լոյսին տեղի տուեց ցերեկուայ լոյսը, Արտուշի հայեացքներն այլ եւս չէին փնտռում լոյսի ճաճանչները... Նա մեղեդում էր արդէն այնտեղ, պայծառ, անսահման եթերում, հրեշտակների հետ... Նա մեռնում էր։

—Աստուած իմ, լոյս, մի քիչ լոյս...

ԼԵՒՈՆ ԳՐԻԳՈՐԵԱՆՑ

# ԱՌԱԿՆԵՐ

## I

### ՈՒՂՏՆ ՈՒ ՁԻՆ ԵՒ ՋՈՐԻՆ

*Կռիւ արին ուղտն ու ձին՝*
*Մէջտեղ զոհուեց խեղճ ջորին։*

*Մութ պատճառից կռիւ ծագեց*
*Օրերից մին Ուղտ ու Ձիու միջև.*
*Ասողներ կան՝ թէ կռուարարն էր Դևը։*
*Սա, ասում են, տեսնելով թէ ինչպէս Ձին*
*Ողորկ՝ փայլուն, զուարթ՝ կայտառ,*
*Խաղալով էր կըրում բեռը իւր ազնիւ,*
*Շարժել ըսկսեց նա սև նախանձը Ուղտի։*
*Դու՛ Դիւսին,—ասաց,—պատկեր,*
*Ու անապատին դու յաղթող,*
*Ու լեռների ձիւնապատ*
*Թիկունքի վրայ գնացիկ նաւ.*
*Տես, դու մէջքըդ վիրաւոր*
*Մինչդեռ կըրում ես աղը,*
*Ի՜նչպէս խըրոխտ խըրխինջով*
*Ձին հեծուորին է տանում։*
*Միթէ վայե՞լ է քեզի,*
*Որ դու, վըսեմ կենդանի,*
*Դու՛, որ համակ խորհուրդ ես,*
*Յօնքըդ թանձըր, աչք մըթագին, խորատես,*
*Բարձրադիտակ կարակնաձև պարանոց,*
*Որ վեհակերպ երբ շըրջում ես այս այն կողմ՝*
*Պատկառանք ես ազդում*
*Քեզ դիտող դու մարդուն.*
*Միթէ վայե՞լ է քեզի,*
*Որ աւելի աղը կըրես քո մէջքին*
*Ու աւելի մարդուն կըրող լինի Ձին։*

*
* *

Այնտեղ՝ ուր Մեծամօրը,
Կէս ճանապարհը կըտրած,
Յառաջ յառաջ է վարում
Իւր ջրերը մըթնամած,
Բաժանելով առուներ՝
Իբըր թևեր ձախ և աջ,
Խոտհարքն էին Մայր Վանքին
Ամենաբեր մարգագետին.
Այնտեղ իրար հանդիպեցին
Արօտական Ուղտն ու Ջին։
—Մինչդեռ ես փափկատապան իմ ոտով
Ասես խոտը գըգվում եմ այս արօտին,
Դու, երկաթով սալած քո կոշտ սըմբակով,
Խոցոտում ես, տըրորում,
Սիրուն դալարը մարգին։—
Այդպէս ասաց Ուղտը՝ խէթ խէթ նայելով,
Սլաքը Ջիու սըրտի խորքը վարսելով։
—Դու, բըրգաձև սապատն ուսիդ շալակած,
Որից է որ դէմքըդ մըռայլ՝
Մըռութդ ունիս կախ արած.
Դու, գլուխըդ քաշ՝ լաւ կանես
Քո եղունը որոնես։—
Այդքան կըրքոտ անարգանքին՝
Փորում խըռովուեց Ուղտի հոգին։
Տըրուեց նըշանը կըռուի.
Թըքեց Ջիու Ուղտն երեսին,
Ջին կից լարեց Ուղտի քըթին։
Եւ դաշտը տեսաւ
Կըռիւների ահեղը.
Արագ շարժուածք, ճարպիկութիւն,
Սալ սըմբակից շանթուող կիցեր,
Ջին, սըրագլուխ յարձակմունքով,
Ըսպառնում էր և՛ խածատել։
Իսկ վիթխարի, մարմնով ահեղ,
Պարանոցն հուժկու, և՛ ձիգ, և՛ երկար.
Փըրփուրը բերնին, աչքերում մութ ցոլք,

Ատամներն ասես ժայռեր լինէին,
Ուղտն արհաւիրք էր ամբողջ իր տեղով։
Բայց Պախիդոնի մէջ և ազնիւ կենդանին
Մեծ էր սրտով.
Եւ յաղթութիւնը նա իր ոսոխին
Տուող չէր երբէք։
Անակընկալ ընդհարումից,
Որով դաշտի անդորրութիւնն աղմըկուեց,
Արօտականք բոլորը նախ ապշեցան,
Յետոյ ապա ուշքի գալով՝
Ներանցից Զորին, Ձիուն տոհմակից,
Խազմն ուզելով խաղաղել,
Մըտաւ մէջներն հաշտարար։
Բայց Ձիուց Ուղտին հարուածը լարուած,
Եւ Ուղտից Ձիուն մոլեգին մի խած՝
Դիպան Զորու կողքերին.
Եւ շընչասպառ կենդանին
Զարկուեց գետին շանթահար։
Անմեղ զոհին այդ տեսարան
Տըւեց արնոտ մարտին վախճան։

Այստեղ Ձիուն միւս տոհմակից,
Համբերատարն ու ծանրախոհ,
Իմաստասէր որոճքով
Կընքեց աւանդ ամենին
Ճըշմարտատիպ այս առակ—

Կըռիւ արին Ուղտն ու Ձին,
Տըւեց զոհը խեղճ Զորին։

II

## ՈՉԽԱՐՆ ՈՒ ՇՆԵՐԸ՝ ԵՒ ԳԱՅԼԵՐՆ ԻՐԱՒԱՐԱՐ

Բացակայութիւնն իմաստուն հովուի
Լայն ասպարէզ էր բացել
Վաղուց ի վեր խուլ մըխացող կըրքերի,
Որով իրար խէթ նայել
Էին սատիկ Շուն և Ոչխար ըսկըսել։
—Դուք ոչ եթէ պաշտպանութիւն,

Իբրև ձեր պարտքն ու պաշտօն,
Այլ՝ բռնութիւն ու զրկում,
Մէկիս բուրդը, միւսիս մազը գզգզել,
Սրա իրաւունքն օրինաւոր խափանել,
Իսկ ապօրէն մի քայլ նըրան թոյլ անել՝
Այդ էք անում
Դուք, ո՜վ Շըներ,—
Էին ասում
Ոչխարներ.
—Այժմ այդպիսով երևելի էք դարձել։
Դուք մեր կաթն էք առուի ափին վայելում,
Ու թըմբի տակ անուշ հովում շընդըռկում.
Իսկ զըրկըւածն էլի մենք ենք ձեզանից։
Էլ ի՞նչ ասենք. Աստուածանից դուք գըտնէք։—
«Մի իրաւունք մեզի վերից
Ձեզի վըրայ տըրուած է.
Ձեր միս մերն է,
Ձեր ոսկորը միայն ձեր»։
Այդպէս հատու մի պատասխան
Տուին Ոչխարին Գամփըռներ։
Ու կըրքերը մըխում էին խուլ ու խուլ,
Եւ կըռիւը պատրաստվում էր սուր ու սուր։
Հուսկ պատահեց սոսկալին։
Մինչ մին եղջիւր ու կըճղակ,
Միւսն ատամ ու ճիրան
Խառնել էին ու ծեծվում,
Եկան միջև ցըցուեցին՝
Այն խօլ կըռուին բաժանարար,
Գայլերը բարձր իրաւարար։
Եւ դուք գիտէք Ջըրի վըրայ
Դատը կըտրողը Գառան,
Ի՞նչ փաստերով նաև այստեղ
Պիտի կըռուին տար վախճան։
Ոչխարները ջարդ կերան,
Փորը թափուեց Շըների,
Ու Գայլերին միմիայն
Բերեց կռիւը բաղդ բարի։

* * *

Կաղ է Ջըղջուհին երկու ոտից.
Լանկին տալով մինչ հասնելը՝

Բանն անցած է լինում բանից։
Թէ ապիկար է հովիւ,
Ու իրաւազեղծ են Շըներ,
Ոչխարին վայ,
Ձեր աչքը լոյս, Սարմատացի՛ դուք Գայլեր։

III

## ՀԱՐՍՆ ՈՒ ՑՈՒԼԸ

Առաւօտից երեկոյ,
Մի քանի օր շարունակ,
Ձեր արևի շողի տակ
Ժողովելով, փըռելով,
Տակը վըրայ ու վըրան տակ շըրջելով,
Ժըրագըլուխ Հարսը տան
Կիտել էր, կուտոցել էր
Չոր ու պատրաստ մի կոյտ ցան։
Երեկոյին մայիսի,
Նախիրը չէն մըտնելով,
Շիկասիրուն երինջների
Խըմբի մէջը գոռալով՝
Ցուլը հըպարտ, Ցուլը գոռ,
Հուպ մօտեցաւ ցանկոյտին
Ու վըիժակները կոխեց,
Պոռոչելով մոլեգին,
Կոխեց մէջը ցանկոյտին.
Ու սիրունիկ Հարսի խընամքը այնքան
Նա տարտըղնեց ցիր ու ցան։
«Վարամ Թալես դու, գէշ Ցուլ»,
Աչքը շողուն արտասուք,
Կուրծքն ելևէջ, ձայնը խուլ,
Տըւեց Հարսը մուր ու Թուք.
«Շընորհքը ցան փըռուելը չէ.
Շընորհքը ցան ժողվելն է»։
Խըրատ բոլոր Ցուլերին,
Որոնք պատրաստը գիտեն
Ցըրել չորեք հողմերին։

Ա. Մ. ԵՋԵԿԵԱՆ

# ԿՈՅՐ ԲԱԽՏԸ

Երբ այն նիհար, դալկադէմ աղջիկը, որի վառ այտերը վաղաժամ խորշոմել էին անքուն գիշերներից աշխատանքի լծի տակ, անցնում էր փողոցներով, ականատեսները հիացքով ու զարմանքով էին նայում նրա ետեւից։ Նրանց ապշեցնում էր աղջկայ գանգրահեր գլուխը։ Հին ոսկու գոյն՝ նրբաթել քօղի նման՝ ուսերին փռուած էին հիասքանչ մազերը։ Եւ երբ զեփիւռը խաղում էր, ծածանում դալկադէմ աղջկայ ոսկեթել գանգուրները՝ չքնաղ պատմուճանի նման փռուած նրա թիկունքին, ոչ մի մահկանացու չէր կարող անտարբեր նայել թիկունքին փռուած այդ գանձին։ Յիրաւի, յաճախ մօտենում էին, զննում այդ հրաշքն ու շոյում, բարձրաձայն յայտնում անզուսպ զմայլանքը, իսկ աւելի յաճախ՝ նախանձի սպանիչ հայեացքներ ձըգում։

Մի անգամ աղջիկը լսեց, թէ ինչպէս մի հարուստ կին աղաղակեց.

—Բնութեան հեգնանքն է... Ինչի՞ է պէտք խղճուկ բանուորուհուն այդ սքանչելի զարդը... Եւ ի՜նչ հրաշք է... Թագուհին անգամ կարող էր պարծենալ այդ ոսկեձոյլ գանգուրներով...

Իսկ հետեւեալ կիրակի օրը յանդգնութեամբ մօտեցաւ ու՝ դէմքին սիրալիր արտայայտութիւն տալով՝ արտասանեց.

—Աղջիկս, արդեօք չէ՞ր կամենայ ծախել այդ մազերը... Ես քեզ շատ փող կը տամ։ Այդ փողով կը կարողանաս նոյն իսկ ոսկի ժամացոյց գնել։

Հերարձակ աղջիկը զարմանքով նայեց հարուստ տիկնոջն ու կամեցաւ ասել.

—Ինչպէ՞ս... ծախել այդ մազերը, միակը՝ ինչով կարող էի պարծենալ։ Իսկ ի՞նչ կասէին ընկերուհիներս, ի՞նչ հեգնանքով նրանք ինձ կը դիմաւորէին... Ի՞նչ կասէր իմ նշանածը՝ վառվռուն և ուժեղ դարբինը գեղեցիկ. նշանածս, որը սիրում է ազատ

ժամերին փայփայել այս շքեղագոյն գանգուրները ու գրեթէ միշտ կրկնում. «Իմ փոքրիկ ընկերուհի. այդ ոսկեթել մազերդ միակն է, ինչով շոյել է քեզ բախտը։ Եթէ դու դրանց կորցնես, ինձ էլ կը կորցնես։ Դու դրանցից կը զրկուես, և ես կը սիրեմ ուրիշ աղջկանց և ուրիշ աղջկերք ինձ շատ կը սիրեն...»։

Դալկադէմ աղջիկը՝ հարուստ տիկնոջն այդ ամենը ասել կամեցաւ, սակայն մտածեց, որ չարժէր օտար մարդու առաջ՝ սրբութիւն-սրբոցը մերկացնել... Մտածեց ու լուռ շարունակեց իր ճանապարհը, լուռ ու անխօս...

Այնուհետև, այդ փոքրիկ էակի գլխին շատ թշուառութիւններ թափուեցին, շատ տառապանքներ կրեց։ Շատ յաճախ՝ չքաւորութեան լծի տակ՝ դառնացաւ, կիսաքաղց ապրեց, սակայն բախտի գեղեցիկ զարդը շարունակում էր սփոփանք լինել նրան. փայլում էր թիկունքին ոսկեձոյլ թագի նման՝ պճնում գլուխը բազմահոգս...

Հայրն արդէն վաղուց էր զրկուել աշխատանքից, մայրը՝ վախճանուել։ Երկու փոքրահասակ մանկունք մնացել էին իր հոգատարութեան։ Ամբողջ գիշերը՝ լամպարի աղօտ լոյսի տակ կարում էր ու ձևում։ Սակայն՝ ժպիտը միշտ ցոլում էր դալկացած դէմքին. սիրում էր գեղեցիկ դարբնին ու նրա փաղաքշանքներով ապրում։

Բայց դժբախտութիւնը երբէք միայնակ չի գալիս. հասաւ մի օր, երբ բախտը նորից չար որոգայթ լարեց։

Հիւանդացաւ ծանր՝ իր սիրած նշանածը, վառվռուն ու առոյգ դարբինը սիրուն. մուրճի ծանր հարուածից ծունկը վնասուեց։ Երկար ժամանակ աշխատանքից զրկուեց։

Ու մռայլ յուսահատութիւնը տիրեց նրանց հոգուն։

Երկար կռուեց աղջիկը, երկար ժամանակ անքուն գիշերներ աչքերը կուրացնում էր լամպարի աղօտ լոյսի տակ...

Ու հասաւ մի ծանր, խեղդիչ օր, երբ նա բաղխեց հարուստ տիկնոջ դուռն ու երկչոտ հեզութեամբ առաջարկեց.

—Դուք կամենո՞ւմ էիք գնել իմ մազերը... Ես պատրաստ եմ...

Հարուստ տիկինն անկարող եղաւ հրճուանքը թաքցնել։ Կանչեց վարսավիրին, ու ոսկու սքանչելի կոհակները սառը մկրատի տակ իրանց շունչը տուին...

Եւ երբ հերոս-աղջիկը դուրս եկաւ՝ փոխանակ իր գանձի՝ մի քանի ոսկու կտոր ձեռքին՝ խուլ կերպով զգաց, թէ ինչ խոշոր յանցանք, յանցանք իր դէմ՝ այդ վայրկեանին կատարեց։

Գեղեցիկ դարբինը սկսեց առողջանալ...

*Սակայն յաճախ, շատ յաճախ նրա օտարոտի հայեացքը ցնցում էր խղճուկ աղջկայ սիրտը, ինչ-որ սարսուռ ներշնչում...*

*—Իմ փոքրիկ ընկերուհի, —ասում էր դարբինը, —ինչու այդ ոսկեթել մազերը, միակը՝ որը պարգեւեց քեզ բախտը, ինչու դու զոհեցիր...*

*—Չէ՞ որ քեզ համար էր, քո սիրոյդ համար... Ոչ, ես չը զրկուեցի իմ բախտիցս, այլ բախտիս տիրեցի...*

*Դալկադէմ աղջկայ անգոյն աչերում փայլում էին արցունքի կաթիլներ, ինչպէս ուշ աշնանը եղեամը դաշտերում։*

*Իսկ երբ գարունը հասաւ, գեղգեղեց վտակը անտառում, ծառերը պճնուեցին ծաղկունքով ու հեռու՝ անտառում՝ սոխակը իր չքնաղ երգը նորոգեց, դարբինը, որ կայտառ էր՝ ինչպէս գարնան վտակը թրվռուն, սիրուն դարբինը ամուսնացաւ։ Գեղանի հարսնացուն ձիւնաթոյր հագուստում նման էր շուշանի, իսկ մազերը՝ ինչպէս սեւ սաթ՝ փռուած էին թիկունքին։*

*Եւ հէնց նոյն գիշերը՝ հեռու անտառում, ուր սոխակն էր գեղգեղում՝ ծաղկունքով պճնուած ծառի վրայ դալկադէմ, աղջկայ դիակն էր ծածանվում... աղջկայ, որի աչքերը անքուն գիշերներից սեւ ու մռայլ էին՝ ինչպէս ինքը արհաւիրքը։*

*Երբ դարբինը լսեց այդ չար գոյժը յուզիչ, վառվռուն դէմքը սքօղուեց թախծութեան շղարշով, ու դալուկ նա շշնջաց.*

*—Զարմանալի աղջիկ էր նա... Եւ ինչ սքանչելի գանգուրներ ունէր ոսկեձոյլ։*

*Թախծութեամբ ու ջերմ համբոյրներ սեահեր նորահարսի շրթունքներին նա դրոշմեց...*

ԿԱՐԻՆԷ

# ԱՐԱԲԻԱՑԻ ՇԷՅԽԸ

(Արաբական լեգենդա)

---

Արաբստանում, ականակիտ աղբիւրներով, չքնաղ ծաղիկներով և բարձրաբերձ արմաւենիներով զարդարուած օազիսներից մէկում, իր հրաշալի ամրոցում ապրում էր շէյխ Ալ-Հարունը:

Նրա կալուածների սահմանները տարածւում էին հեռու, շատ հեռու, այնքան հեռու, որ մինչև անգամ նա չգիտէր, թէ որտեղ են նրանք սկիզբ առնում և որտեղ վերջանում: Շատ ու շատ ժողովուրդներ էին հպատակւում նրան, բայց նրանցից ոչ մէկը բախտաւորութեան և բաւականութեան մէջ չէր ապրում. այդ բոլորն էլ միշտ հեծում էին շէյխի արիւնարբու, քարասիրտ և շահամոլ ծառաների ձեռքի տակ...

Հեծում էին ժողովուրդները, իսկ շէյխը ուշք չէր դարձնում նրանց հեծեծանքներին, այլ աւելի ևս խրախուսում էր իր կառավարիչների սանձարձակութիւնները: Նրա հրամանով սրի էին անցվում ամբողջ գիւղեր և անմեղ զոհերի գլուխները ցցի անցվում ու ժողովրդին ի տես դրվում, իսկ նրանց կայքերը յարքունիս էին գրաւվում: Արիւնով ցողուած էր շէյխի ամբողջ թագաւորութիւնը, իսկ նրա արքունիքում հընչում էր երաժշտութիւնը, կնդրուկ ու հոտաւէտ իւղեր ծխվում... Այն ժամանակ, երբ ամբողջ գիւղեր հրդեհի ճարակ էին դառնում, իսկ նրանց մէջ ապրողները սրի կերակուր դառնում, շէյխը և իր մինիստրները սևաչեայ հուրիների գրկում զուարճանում էին և օրգիաների մէջ անց կացնում իրանց օրերը... և իրանց զուարճութեան միջից քրքիջով դիտում տանջուող ժողովրդի ճիգերը...

Եւ այսպէս շարունակւում էր երկար, շատ երկար...

Տարիներն անցնում էին տարիների ետևից, և շէյխի երկիրը դատարկւում ու աղքատանում էր, իսկ ճնշումներին կար-

ծես վերջ չէր լինելու...

Բայց ճակատագիրը հետամուտ էր շէյխին...

* * *

Շէյխը չափազանց սիրում էր ձիեր։

Հեռու Անտերբէյջանից նրա համար նուէր էին ուղարկել երկու հրաշալի մատակներ։ Նրանք այնպէս գեղեցիկ մարզուած էին, որ շէյխը չէր կարողանում զսպել իր հրճուանքը։

Մի անգամ, երեկոյեան նամազի ժամանակ, շէյխը, իր սիրելի մատակները կառքին լծած, առանց կառավարի դուրս եկաւ զբօսնելու։

Զբօսանքի ժամանակ մատակներից մէկը, երևի յիշելով իր հայրենիքի ազատ դաշտերը, խրխնջաց։ Զայրացած շէյխը բարձրացնեց մտրակը և զարկեց ձիու մէջքին։

Ձին կանգնեց և սկսեց այսպէս խօսել (Ալլահին ցանկալի էր եղել, որ ճակատագրի կատարման պատճառով՝ ձին մարդու պէս խօսէր)։

—Ինչու ես խփում ինձ։

Շէյխը մնաց քարացած։ Նրան այնպէս թուաց, որ ինքը լաւ չլսեց... Ձին խօսէ՞... խօսէ, և այն էլ իրան հե՞տ... այն մարդու հետ, որը հրամայում է մի քանի ժողովուրդների, որի ներկայութեամբ նրա ամեն մի հպատակը համր պէտք է մնար և որի վրայ ոչ ոք չպէտք է համարձակուէր առանց ահի նայել... նրա՝ կիսաստուծու հետ խօսէր, և այն էլ ո՞վ,—մի ձի՞... մի անլեզու կենդանի՞...

Շէյխը բարկութիւնից կապտեց։

Եւ րոպէական մտածմունքից յետոյ մտրակի զարկերը կարկտի պէս տեղացին ձիու մէջքին...

Ձին կատաղեց, յետին ոտքերի վրայ ծառս ելաւ, սկսեց աքացիներ տալ... Հպարտ կենդանին ուզում էր ջարդ ու փշուր անել կառքը, բայց... նրա ընկերը ըստ երևոյթին շէյխի կողմն էր պահում։

Շէյխը օգտուեց դրանից և հրամայեց միւս ձիուն՝ խաղաղեցնել ըմբոստին, աքացի տալ նրան...

Կենդանուն հանգստացրին, և երկուսին էլ, քթածակերով ձողեր անցկացնելով, նորից ճանապարհ ձգեցին։

Ձեռքն առնելով սանձերը, շէյխը սկսեց անգթաբար ծեծել մտրակով, և այս անգամ արդէն... երկուսին էլ...

Ալ-Հարունը յագեցնում էր իր վրէժի զգացմունքը...

Իր ընկերոջը դաւաճանող ձին զգաց իր սխալը և գլուխը քարշ ձգեց։

—Ներիր ինձ, ընկե՛ր,—մրմնջաց նա.—գործենք միասին և փախցնենք շէյխին...

—Փախցնենք։

Եւ նրանք երկուսն էլ միաբան առաջ վազեցին, ի մի հաւաքելով իրանց բոլոր ոյժերը, և, չնայելով իրանց կաշկանդող երկաթէ ձողերին, փախցրին շէյխին...

Ալ-Հարունը դադարեց նրանց հարուածելուց...

Ալ-Հարունը սկսեց ձգել ձիերի սանձը, բայց սանձը չդիմացաւ և կտրտուեց...

Ալ-Հարունը աղաղակում էր...

Ալ-Հարունը խնդրում էր...

Բայց արդէն ուշ էր...

Ձիերը փոթորկի պէս առաջ սլացան. կառքը զարկուեց ժայռերին և փշուր-փշուր եղաւ, թողնելով քարերի վրայ ընկած Ալ-Հարունի արիւնաթաթախ դիակը՝ ջարդուած գանգով...

Ահա այսպէս պատժեց ճակատագիրը ժողովրդի ցեց շէյխին...

Եւ ժողովուրդը ազատ շունչ քաշեց...

Մեծ և անքննելի են ամենակարող Ալլահի գործերը,—այսպէս է վերջացնում ուղղափառ արաբը իր պատմութիւնը։

Թարգմ. Վ. Թ.

---

# ԳՈՂԻ ՕՐԱԳԻՐԸ

(Էօժէն դը Բրիէօից)

---

8 յուլիսի

Ես գողացայ...

Բսակը իմ ձեռքումն է։

Ես հէնց այս րոպէիս համարեցի նրա մէջ գտնուած արժեթղթերը...

Երէկուայ բօրսայի գնով իմ ձեռքում կան 117,328 ֆրանկի արժեթղթեր։

Բացի դրանից՝ հինգ-հազար ֆրանկի և երկու-հարիւր ֆրանկի բանկային տոմսեր...

Ես հարուստ եմ...

Յուզմունքից ես անկարող եմ շարունակել։ Այսօր երեկոյեան, համարելով թանկագին արժեթղթերը, ես մի քանի անգամ սարսափահար եղայ... Փոքրիկ սեղանի վրայ ջոկելով բաժնեթղթերի ու պարտամուրհակների կապոցները, յանկարծ ինձ թուաց, որ ով-որ բաղխեց սենեակիս դուռը...

Այդ բաղխումը ազդեց ինձ վրայ. կարծեցի թէ բռունցքների հարուածներ էին...

Արագութեամբ հանգցրի ճրագը. փէտացայ. շունչս կտրուեց, արիւնս խփում էր երակներում...

Ես զգացի, որ ով-որ շնչում է դրան ետևում...

Մի փոքր սպասելով, ես զգուշութեամբ վեր կացայ, աշխատելով աղմուկ չհանել և աթոռս յետ տանել...

Սակայն, չնայած բոլոր նախազգուշութիւններիս, գրիչս սողաց ձեռքիցս և ընկաւ սեղանի վրայ...

Ես քարացայ...

Շունչս ներս քաշելով ես դարձեալ նստեցի և այլ ևս չը համարձակուեցի բարձրանալ տեղիցս...

Վերջապէս ոտներիս մատների վրայ ես մօտեցայ դրանը և ականջս դրի բանալիի ճեղքին...

Լսեցի սանդուղի վրայ վառուող գազի ճրճրթոցը, ինչ-որ խօսակցութիւններ հարեւան շինութեան մէջ և իմ սենեակիս տակ ապրող դրկիցի քայլերը…

Զգուշութեամբ բռնելով դռան կոթը՝ ես դուռը բացի…

Նախասենեակում ոչ ոք չկար…

Այն ժամանակ ես նորից վառեցի ճրագը և կրկին կպայ իմ՝ մի քանի անդամ ընդհատուած աշխատանքին… Այժմ ես այլ ևս չեմ վախենում ոչ մի բանից…

. . . . . . . . . .

Մէկ ամիս առաջ ես հիւր էի հօրեղբօրս մօտ, որ ապրում է Պարիզից դուրս…

Ահա արդէն երկու տարի է, որ ես անգործ եմ, պարապում եմ երբեմն թատրօնական պիէսներ արտագրելով՝ իւրաքանչիւր գործողութիւնը երեք ֆրանկով և դրանով ապրում եմ։

Հօրեղբայրս պահեց իր մօտ իբրև սպասաւոր և, նշանակելով ամսական 5 ֆրանկ, տեղաւորեց մի փոքրիկ սենեակում…

Երեկոյեան, երբ կամենում էի պառկել, հարեւան տան պատուհանում լոյս նկատեցի. ինչ-որ ծերունի համարում էր բանկային տոմսեր և պարտամուրհակներ, որոնք այժմ իմ ձեռքումն են… Վերջացնելով իր աշխատանքը, ես պարզ տեսնում էի, թէ ինչպէս նա արժեթղթերը դրեց քսակի մէջ և, վերցնելով ճրագը, աներեւութացաւ…

Մի փոքր անց՝ լոյսը երեւաց գոմի դռների ծակերից, իսկ յետոյ, հինգ րոպէ չանցած, ամեն բան կրկին մթնեց…

Զգիտեմ ինչու և ինչ նպատակով ես այդպէս վարուեցի. բայց միւս օրուայ համար ես այնպէս սարքեցի, որ ամբողջ օրը անցրի հօրեղբօրս մօտ…

Հէնց որ նա պառկեց անկողնում, հարեւանի այգին բաժանող ցանկապատի վրայով սողացի մեր այգին և, կանգնելով գոմի դռների մօտ, սկսեցի սպասել… Ժամանակը տանջուելու պէս ուշ էր անցնում։

Բայց ահա՝ երէկուայ տեսարանը կրկնուեց ամբողջովին։

Փականի արանքից նայելով, տեսայ, թէ ինչպէս ծերունին քսակը ձեռքին մտաւ, ճրագը դրեց գետնին, կռացաւ և մեծ ջանքերով բարձրացրեց մեծ սալաքարը։ Թաքցնելով այնտեղ քսակը, նա ծածկեց սալաքարը և, վերցնելով ճրագը, աներեւութացաւ…

Ես վերադարձայ տուն և պառկեցի քնելու։ Հետեւեալ առաւօտ ես յիշեցի, որ գոմի դռների փականի պտուտակը հա-

նել չարժէ, և, հաստատ ու որոշ չմտածելով իսկ ծրագրիս մասին, բանալին հանեցի այգու դռնակից։

Ես շատ լաւ գիտէի, որ մեր հարևանը յայտնի էր իր ժլատութեամբ և ապրում էր բոլորովին միայնակ...

Ես այդ մասին համարեա մոռացել էի, երբ երէկ... Այո, յիրաւի այդ պատահեց երէկ...

Ես քաղցած էի. ինձ մօտ ոչինչ չկար, որ գրաւ դնէի... Բառիս բուն նշանակութեամբ աղքատ...

Գիշերով ես դուրս ելայ, զգուշութեամբ մտայ այգին, բաց արի դռնակը, թռայ ցանկապատից, հանեցի գոմի փականը, բարձրացրի սալաքարը և տիրացայ քսակին...

Վերցնելով, կրկին ամեն բան կարգի բերի ու վերադարձայ տուն...

Ինձ ոչ ոք չտեսաւ...

Ամբողջ օրը ես չէի համարձակվում բանալ քսակը... բայց այսօր երեկոյեան արիութիւնս ժողովեցի։

117,000 ֆրանկի արժեթղթեր և, բացի դրանից, 9000 ֆր. կանխիկ փող... Ես ունեմ 126,000 ֆրանկի հարստութիւն...

9 յուլիսի

Ես շատ լաւ քնեցի։ Եւ զարմանալի է, որ ոչինչ չտեսայ երազումս։ Զարթնելով՝ ինձ մի փոքր ժամանակ էր հարկաւոր, որ համոզուեմ, թէ «այդ» ճիշտ է։

Այժմ ամբողջ գործը կայանում է նրանում, որ ես կարողանամ «դրան» սովորել...

Ես մի փոքր կրթուած եմ, կարողանում եմ տրամաբանօրէն քննադատել. խիղճս լուռ է, իսկ ես մտածում եմ ապագայ դրութեան մասին։

Ես քաղցած էի... Վերցնելով երկու-հարիւր ֆրանկի տոմսեր և զգուշութեամբ ու խնամքով քսակը թաքցնելով արկղի ուղիղ յատակում՝ ես կրկնակի փակեցի դուռը և իջայ ներքև. իջնելով աստիճաններով՝ ես մտածեցի, որ բոլորովին հանգիստ լինելու համար դռներին պէտք է գաղտնի փական շինեմ...

Այստեղ ակամայից հռհռացի...

Միթէ հարուստ մարդը կարող է այլ ևս ապրել այս վերնայարկում...

Ճանապարհին ես ամբողջ ժամանակ ինքս ինձ հետ վիճում էի, մտածելով թէ ուր տեղափոխուեմ. և մինչև այժմ էլ չեմ վճռել...

Այն րօպէին, երբ մտնում էի կրպակը, զգացի որ ուզում

եմ յիմարութիւն անել։ Ես կրպակատիրոջը պարտ եմ... Եթէ պարտքս վճարեմ, այն ժամանակ կարող եմ կասկած յարուցանել։

Ու հեռացայ...

Իմ մէջ ցանկութիւն զարթնեց մի լաւ հիւրանոց մտնել։ Վաղուց էր, որ կարգին մի բան չէի կերել... «Ես իրաւունք ունեմ,—մտածում էի ես,—կարգին նախաճաշ պահանջել»։ Բայց մի փոքր մտածելով՝ հասկացայ, որ պէտք է զգոյշ լինեմ և իմ կեանքի ձևը պէտք է փոխեմ աստիճանաբար...

Ուստի ես նախաճաշեցի 35 սուի... Ուտելու ժամանակ դիտում էի ես ճաշարանը. լցնող դժբախտներին և մտքումս ցնծում էի՝ յիշելով 126,000 ֆրանկի մասին։ Նախաճաշից յետոյ ես յօժարութեամբ կառաջարկէի խեղճերին իմ հաշուով ճաշել, բայց ոչինչ չարի և շատ էլ ցաւեցի, որ չկարողացայ անել։

Նախաճաշի համար վճարեցի իմ հարիւր ֆրանկնոց տոմսերից մէկը։ Բաւական երկար ժամանակ անցաւ, մինչև որ բերին մնացորդը, և ես սկսեցի անհանգստանալ...

Ինձ թւում էր, որ արդէն ամեն բան բացուել է և իսկոյն կերևայ ոստիկանը...

Մի քանի վայրկեանից յետոյ անհանգստութիւնս կատաղութեան փոխուեց...

Ես վերցրի գլխարկս, վճռելով աւելի լաւ է կորցնեմ մնացորդ փողը, քան ընկնեմ թակարդի մէջ, ինչպէս երեխայ...

Իմ ետևից լսեցի՝

—Պարոն, պարոն։

Ես արդէն դուռը ետևիցս փակեցի...

Ինչ անեմ. փախչե՞մ. երեսս շրջե՞մ և տեսնե՞մ ոստիկանի գլխարկը։

Ես տատանվում էի, բայց յետոյ արիացայ և յետ նայեցի...

—Ահա ձեր մնացորդ փողը։

Ես կոպտութեամբ հայհոյեցի սպասաւորին, որ այնքան երկար սպասեցնել տուեց ինձ...

25 յուլիսի

Ամբողջ երեք շաբաթ ես ոչ մի սխալ չգործեցի։

Հարիւր ֆրանկից մօտս մնացել է այժմ 3 ֆրանկ 50 սանտիմ միայն։

Սակայն երէկ ես տուն վերադարձայ բաւական արբած... Ինձ շատ վատ էի զգում. շորերս էլ կեղտոտուել էին...

Ես այսօր առաւօտեան շորերս լուացի, բայց լուանալուց յետոյ երևացին նրա միւս պակասութիւնները… Կարերը դեղնել էին. իսկ թևերը և կոճկածակերը պատառուել էին…

Իմ վերջին շապիկս այնպէս կեղտոտ է, որ չեմ վստահանում հագնել… Կեղտոտ սպիտակեղէնի միջից ընտրեցի մի շապիկ և հագայ, բայց… Թարս երեսով…

Երբ բոլորովին հագնուեցի, ես հանգստացայ…

Ես ուղղակի մուրացկանի տեսք ունեմ…

Հը-հը-հը, դա ծիծաղելի է։

Մուրացկա՜ն, որ 126,000 ֆրանկի տէր է…

Վերցնենք 1000 ֆրանկ և շոր գնենք։

. . . . . . . . . .

1000 ֆրա՜նկ.

Եւ այս հագուստո՞վ գնամ մանրացնեմ հազար ֆրանկնոց տոմսը։

Այն ժամանակ ամենից լաւն այն կը լինի, որ գնամ ոստիկանական կոմիսարի մօտ ու յայտնեմ.

—Պարոն, ես գող եմ։

Բայց հանաքը մի կողմը մնայ… Փառք Աստուծոյ, ես դեռ բոլորովին գլուխս չեմ կորցրել որ այդպիսի յիմարութիւն անեմ… Ես ունեմ այնքան, որ կարող եմ ապրել և չեմ մտածի, թէ այսօր կուշտ եմ, վաղը քաղցած եմ մնալու։

26 յուլիսի

Ես ոչինչ չգտայ։

Ո՜հ, Աստուած իմ, ինչպէս աղքատ եմ ես Պարիզի՜ մէջ, 126,000 ֆրանկը գրպանս…

Այժմ ինձ մօտ միայն 13 սու կայ։

Նոյն օրը ճաշից յետոյ

Ես վերադարձայ «ազգային գրադարանից»։ Այսօր առաւօտեան կրկին յոյս ունեցայ, որ որևէ բան կը մտածեմ փողերը մանրացնելու համար։

Յանկարծ միտքս մի բան եկաւ։ Ես ունեմ 126,000 ֆրանկ. շարունակ կրկնում եմ ես այս խօսքերը, բայց ճշմարի՞տ է արդեօք այդ։ Այդ թղթադրամները որևէ արժէք ունե՞ն։ Ես լսել եմ, որ նրանց երբեմն ոչնչացնում են… Ի՞նչ է նշանակում ոչնչացնել, ինչպէ՞ս հասկանամ. ոչնչացրե՞լ է նրանց ծերունին թէ՞ ոչ։ Ես չեմ վստահանում բանկ գնալ և այնտեղ տեղեկութիւն առնել։

Այն ժամանակ ես մտածեցի, որ «ազգային գրադարանում» պէտք է այնպիսի գրքեր լինեն, որոնցից կարելի է քաղել այդ տեղեկութիւնները։

Ընդհանուր դահլիճում ես պահանջեցի բօրսային գործողութիւնների վերաբերող հատորը։

Ցիմարատես մի պաշտօնեայ ծիծաղեց խօսքերիս վրայ։

«Կարող ես, սիրելիս, ծիծաղել ինձ վրայ,—մտածեցի ես ինքս ինձ,—բայց երկուսիցս ամենախեղճը յամենայն դէպս ես չեմ»։

Ես գտայ՝ ինչ որ ինձ անհրաժեշտ էր։ Երևաց, որ գոյութիւն ունի մի յատուկ լրագիր, որ յայտարարում է ոչնչացուած արժեթղթերի №№-ները։ Այդ լրագիրը վաճառում են բօրսայում՝ համարը 10 սուով։ Ես գնեցի, և ինձ մօտ հացի փող մընաց ընդամենը 3 սու։ Այդ փողով ես հաց գնեցի և այլ ևս ինձ մօտ ոչինչ չմնաց։

Մնացել էին միայն 9000 կանխիկ և 117,000 ֆրանկի արժեթղթեր։

Ի՞նչ անեմ վաղը կուշտ լինելու համար...

. . . . . . . . . .

Ծերունին ոչինչ չարեց. արժեթղթերը իրանց լիակատար գինն ունեն։

Ամբողջ կարողութիւնն ինձ է պատկանում։

Այս մտածմունքները ստիպեցին ինձ երկար մտատանջութեան մէջ ընկնել։

Գլուխս ցաւում է անասելի կերպով։

Պառկում եմ քնելու։

Կէս օրուայ ժամը 1-ին

Այս րօպէիս ձեռքս տարայ բարձիս տակը, իմանալու համար թէ իր տե՞ղն է արդեօք քսակը։

Ես քաղցած եմ։

27 յուլիսի վաղ առաւօտեան

Թո՛ղ լինի, ինչ լինելու է։

Այսօր անհրաժեշտ է որ մի միջոց մտածեմ թղթերից մէկը մանրացնելու։

Կէս գիշերին

Վերադառնում եմ տուն բոլորովին ջարդուած յոգնածութիւնից... Ոչ մի բան չկարողացայ վճռել և հազիւ եմ

կարողանում ոտքի վրայ մնալ...

Ի՞նչ է լինելու այսուհետեւ ինձ հետ։

Ահա թէ ինչ արի ես...

Ինքս ինձ հարց տուի. «Ի՞նչ հանգամանքներում աղքատը կարող է մանրացնել հազար ֆրանկնոց արժեթուղթը»։

Սկզբում դա ինձ միանգամայն անկարելի երեւաց։ Իսկոյն կը կասկածեն, որ փողերը պատկանում են ոչ նրան, ում ձեռքումն էլ որ են...

Սակայն, երկար մտածելուց յետոյ, եկայ այն եզրակացութեան, որ դա բայց և այնպէս կարելի է գլուխ բերել։

Ես վճռեցի երկաթուղային կայարաններից մէկում տոմսակ գնել որեւէ հեռաւոր տեղի համար, օրինակ Կ. Պօլիս կամ Մոսկվա... Կասսայի փոքրիկ պատուհանից տոմսակավաճառը կը տեսնի միայն իմ կեղտոտ ձեռքերը, որոնց ես կաշխատեմ աւելի կամ պակաս չափով գեղեցիկ տեսք տալ... Եւ, հասկանալի է, իսկոյն և եթ կը հեռանամ. սկզբում կը գնեմ էժանագին զգեստ, մի փոքր անց՝ աւելի լաւը, և կունենամ այնպիսի մարդու կերպարանք, որ ունի 1000 ֆրանկ, առանց որեւէ կասկածի տեղիք տալու...

Ես գոհ էի և մեծամտում էի իմ գիւտով...

Բայց ո՞ր կայարանումն եմ վերցնում տոմսակ մինչև Մոսկվա։

Դիմելով «Արեւելեան» կոչուած կայարանը, սկսեցի անց ու դարձ անել դահլիճի միջով, դիտելով կասսաներից կախուած գրութիւնները...

Բայց յանկարծ յուսահատութեան մէջ ընկայ... Իւրաքանչիւր կասսայի մօտ կանգնած էր մի չինովնիկ, որ ուշադրութեամբ քննում էր ճանապարհորդներին, իսկ ոստիկանական պաշտօնեաները վխտում էին ամեն տեղ... Երեւաց, որ կայարաններումն էլ հերթապահում է ոստիկանութիւնը՝ յանցաւորներին ձերբակալելու համար... Իսկ ինձ աւելի շուտ կընդունի մարդասպանի տեղ, որ ցանկանում է շտապով փախչել արտասահման...

Նշանակում է՝ այս յոյսն էլ պէտք է ի դերև ելնէ...

. . . . . . . . . .

Կէս ժամ անց՝ ես կրկին յոյս ունէի...

Աղքատը կարող է մանրացնել հազար ֆրանկնոց տոմսը այն դէպքում, երբ այդ արժեթուղթը նրան «չէ» պատկանում...

«Բայց ինչ միջոցով նա ձեռք կը ձգէ հազար ֆրանկ»— հարց տուի ինքս ինձ։

Շատ հասարակ կերպով. եթէ նա որևէ տեղ ծառայում է...

Ինձ հետ այդպիսի բան մասամբ պատահում էր, երբ հաշուապահ էի թղթի խանութներից մէկում: Տէրս յաճախ ինձ ուղարկում էր փող մանրացնելու Դրուօ փողոցում գտնուող բանկը:

Ես շտապեցի տուն... Մի քանի թանաքի բծեր կաթեցրի շորերիս վրայ. ապա կաւիճով մի փոքր մաքրեցի օձիքս և շապկիս թևքերը և, գրիչը անց կացնելով ականջիս ետևը, առանց գլխարկի— ինչպէս անում էի սկիզբներում—վճռական քայլերով դիմեցի Դրուօ փողոցը և մտայ բանկը...

Գրիչը ականջիս ետևում դրած՝ ես նման էի հարևան խանութներից եկած գործակատարի:

Կարդալով «Caisse» գրուածքը, ես մօտեցայ և, հանելով հազար ֆրանկնոց արժեթուղթը, ներկայացրի կասիրին.

—Խնդրեմ մանրացնէք հազար ֆրանկը:

Ցանցապատ վանդակում մետաղէ արկղիկների մէջ դարսած էին ոսկէ դրամներ և թղթադրամների կապոցներ...

Ես այնպէս էի զգում, թէ մօտ եմ արդէն նպատակիս:

Կասիրը սկսեց համարել ոսկիները...

Յանկարծ նա կանգ առաւ...

—Ո՞ր ֆիրմայի համար,—հարցրեց նա:

—Ի՞նչ:

—Ես հարցնում եմ, թէ ո՞ր ֆիրմայի համար էք մանրացնում:

Ի հարկէ չէի կարող ասել, որ ինձ համար է:

—«Բրէվալ և ընկերութեան» համար:

—Չեմ ճանաչում:

—Լէ-Պելետիէ փողոցում...

—Մենք միայն մեր յաճախորդների համար ենք մանրացնում...

Ես վերցրի իմ տոմսը և դուրս ելայ ոչ մի խօսք չասելով...

Այժմ արդէն վերջնականապէս կորցրի արիութիւնս...

Առաւօտեան ժամը 5-ին

Ես չեմ կարողանում քնել... քաղցած եմ...

Այն ահագին կարողութիւնը, որ ես ունեմ, զրօյի է հաւասար:

Աւելի լաւ է մեռնել...

31 յուլիսի

*Ոչ մի բան ինձ այլ ևս չի ճնշում…*

*Ես բախտաւոր եմ… ես ազատ եմ…*

*Ես ոչինչ չունեմ…*

*Անցեալ գիշեր համարեա գիտակցութիւնս կորցրի…*

*Տանջուելով քաղցից, վերցրի քսակս, դրի նրա մէջ հազար ֆրանկնոց տոմսը և նետուեցի Սեն գետը…*

. . . . . . . . . .

*Երբ աչքերս բացի, ակամայ աղաղակեցի, որովհետև չկարողացայ հասկանալ, թէ ուր եմ գտնվում ես։ Տեսնելով ոստիկանին երկու քայլ հեռու կանգնած, ինձ կորած համարեցի։ Յիշողութիւնս աստիճանաբար վերադառնում էր… Անկասկած է, որ ինձ հանել են ջրից… Այստեղ այլ ևս չկարողացայ ինձ պահել։*

*—Ո՞ւր է իմ քսակը։*

*Ետևիցս լսուեց մի ձայն.*

*—Չէ՞ որ ես ձեզ ասացի, որ ձեռքում քսակ կար. նշանակում է՝ քսակը կորցրել է ջրում…*

*Ապա նա դիմեց ինձ։*

*—Իսկ ի՞նչ կար նրա մէջ։*

*Ես ձևացրի, թէ վատ եմ լսում, որպէս զի ժամանակ ունենամ գոնէ որևէ պատասխան ճարելու։*

*—Ո՜հ, ոչինչ, ոչ մի արժէք չունեցող թղթեր,—պատասխանեցի ես, դիտմամբ շեշտելով խօսքերս…*

*Գեղեցիկ հագնուած պարոնը խղճում էր ինձ… Իմ մահափորձը, աղքատութիւնս, սպիտակեղէնս, որ բաւական ուղղուել էր, ազդեցին նրա վրայ…*

*Ես պատմեցի նրան, որ գործազրկութիւնը ինձ այդ աստիճանին հասցրեց։*

*Նա հրամայեց հագցնել ինձ և ինձ վերցրեց իր մօտ ծառայութեան…*

*Ես այժմ քիչ եմ աշխատում, բայց լաւ եմ վաստակում…*

*Իմ 126,000 ֆրանկի մասին այլ ևս չեմ մտածում…*

. . . . . . . . . .

P. S. *Պէտք է աւելացնեմ, որ ծերունին կաթուածահար եղաւ՝ հէնց որ լսեց կորստի մասին։*

*Թարգմ. Ս. ԵՍԱՅԵԱՆ*

# ՆՇԱՆՈՒԱԾՆԵՐ

## ԳՈՐԾՈՂ ԱՆՁԻՔ

1. **Յարութիւն.**—*Տերունի կօշկակար։*
2. **Մարիամ.**—*Սրա կինը։*
3. **Օվանէս.**—*Որդին, գործակատար 27 տարեկան։*
4. **Գասպար.**—*Զինագործ, սրա ընկերը 26—27 տ., կարմիր շապկով։*
5. **Սահակ.**—*Փայտի պահեստի պահապան, ծերուկ։*
6. **Գայիանէ.**—*Սրա կինը։*
7. **Շուշանիկ.**—*Սրանց աղջիկը և Օվանէսի նշանածը։*
8. **Գրիգոր.**—*Մի թուղթ խաղացող, ֆրանտ հագնող տղայ։*
9. **Մարգար.**—*Բանուոր կօշկակար։*
10. **Արմենակ.**—*Նոյն (պատանի)։*
11. **Արամ.**—*Փականագործ, Օվանէսի հօրեղբօր որդին։*

*Թուղթ խաղացողներ, կօշկակարների աշակերտներ.*

*Բոլորը հագնում են եւրօպական հագուստ։*

—o—

## ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆ ԱՌԱՋԻՆ

*Բեմը ներկայացնում է միջակ մեծութեան մի աղքատ սենեակ։ Ձախ պատի պատուհանի առաջ մի սեղան, հասարակ սփռոց վրան, սեղանի վրայ լամպ՝ հասարակ թղթի լուսամփոփով, կողքերին մի-մի մոմակալ՝ մոմերով։ Պատուհանի կողքերով պատի վրայ կախուած է մի ձեռագործ հողաթափ, թղթեր դնելու պայուսակ, մի կանացի ձեռքի քսակ։ Սեղանի շուրջը և առհասարակ սենեակում աթոռներ։ Սենեակի աջ անկիւնը յարմարեցուած է խոհանոցի համար. կողքի վրայ գցած մի արկղ, վրան կերօսինի հնոց, ամաններ և այլն։ Մէջտեղի պատի վրայ դուռ, որը տանում է ննջարան, կամ նոյն է խաղասենեակ։ Այդ դուռը բացուելիս՝ երևում է թղթախաղի սեղան, շուրջը աթոռներով։*

### ՏԵՍԻԼ 1.

**Սահակ եւ Գայիանէ**

*ՍԱՀԱԿ.*—*Աղջիկ նշանել և յետ կտրելը հանաք էք կարծում։ Ի՞նչ վատ բան գտաք Օվանէսի մէջ։*

ԳԱՅԻԱՆԷ.—Ի՞նչ անեմ, եթէ երեխայի սիրտը կտրուել է նրանից։

ՍԱՀԱԿ.—Կարելի է՝ դուք նրա երեսի դեղնութեանն էք մտիկ տալիս. բայց նա չլոտ է և երկաթի առողջութիւն ունի։ Բացի այդ՝ նա գլուխը քաշ աշխատաւորի միննն է. և եթէ Շուշանիկը երեխայ է, չի հասկանում, գոնէ դու ինքդ մտածիր, թէ ինչ կասեն ուրիշները։

ԳԱՅԻԱՆԷ.—Ուրիշները ինձ հաց հօ չեն տալիս, պահում, որ ես ամաչեմ։ Փառք Աստուծոյ, հիմա ոչ թէ նշանուածների, այլ երեխատէր ամուսինների բաժանուելն էլ ոչ ոքի չի զարմացնում։

ՍԱՀԱԿ.—Խելքդ գլխի՞դ է արդեօք։ Զլինի՞ չիմանամ նրա մօտ էլ այդպէս բաներ խօսես, թէ չէ՝ Աստուած է իմանում, թէ առանց էն էլ ինչ մոլորութիւններով ենք շրջապատուած։

ԳԱՅԻԱՆԷ.—Բերանից թուղթ հօ չեմ տուել նրանց։

ՍԱՀԱԿ.—Իսկ մեր խօ՞սքը։ Գուցէ քեզ համար մի դատարկ բան է թքածը յետ լիզել։

ԳԱՅԻԱՆԷ.—Ես հօ չեմ կարող մի դատարկ խօսքի համար երեխայիս անբախտութեան պատճառ դառնալ։

ՍԱՀԱԿ.—(Խորհրդաւոր). Մի սովալ ինձ հին դարմանը քամու տալ։ Փառք տուր Աստուծուն, որ նրանց ականջը ոչինչ չի ընկել, թէ չէ՝ կօշկակար Յարութիւնի որդին չէ, որ վերջին շաղլատանը քո աղջկայ անունը չէր տայ։

ԳԱՅԻԱՆԷ.—Շատ հարկաւոր էր. դեռ թող գնայ իրա քաղցած չմնալու հոգսը քաշի, որ գործադուլ անող իրա բանուորների ձեռքին գլուխն է կորցրել։

ՍԱՀԱԿ.—Սանձ դի՛ր լեզուիդ, սանձ դի՛ր լեզուիդ, և եթէ կորեկի չափ էլ է խելք ունես, այնպէս արա, որ աշխարհի խայտառակութեան առարկայ չդառնանք։

## ՏԵՍԻԼ 2.

### Սահակ, Գայիանէ եւ Շուշանիկ

ՇՈՒՇԱՆ.—(Մտնում է աջ դռնից, անճաշակ հագնուած, մի ձեռքին վառ կարմիր գոյնի արեւակալ, կանաչ կապոց, դեղին կօֆտա, կապոյտ գլխարկ, կանաչ ձեռնոցներ). Ուֆ, էլի ով գիտէ ինչ տխրութիւն են բերել այս տուն։

ՍԱՀԱԿ.—Ինչի՞ց իմացար։

ՇՈՒՇԱՆ.—Մի՞թէ դէմքդ չեմ տեսնում։ Ի՞նչ ես ուզում մայրիկից։

ԳԱՅԻԱՆԷ.—Օ՜ֆ։

ՇՈՒՇԱՆ.—Ամենայն օր խեղճին չարչարելով չկշտացա՞ր։

ՍԱՀԱԿ.—Ինչո՞ւ ես սուտ խօսում։

ՇՈՒՇԱՆ.—Հը՛մ... Տէր Աստուած... վեր էինք կենալու սուտ խօսենք։

ՍԱՀԱԿ.—Նախ և առաջ հարցրու, թէ ինչի մասին էինք խօսում։

ՇՈՒՇԱՆ.—Ի՜նչ հարցնեմ... Սուտ է, որ խեղճ մայրիկիս երիտասարդ օրերը խաւարեցրել ես։

ՍԱՀԱԿ.—Ուրեմն ասելդ այն է, որ ես սուս անե՞մ։

ՇՈՒՇԱՆ.—Այ քեզ բան... հը՞մ, քեզ ո՞վ ասաց, որ սուս անես, հը՞մ։

ՍԱՀԱԿ.—Ապա ինչ է, որդի։ Մի՞թէ նրա համար, որ հայրը անաջողութիւնների մէջ է մաշել իր կեանքը, պէտք է որդուց յանդիմանութիւններ լսի։ Չէ՞ որ շաբաթի լուր օրերը փայտի պահեստում մի փոքրիկ, ծխոտ տնակում՝ քեզ համար եմ ոսկորս փտեցնում. Ասա, սիրելիս, ինչո՞ւ համար ես այդպէս փոխուել։ Մի՞թէ քեզ համար այլևս մի օտար եմ, Շուշան. մի՞թէ առաջուայ պէս դու էլ իմ աղջիկը չես, սիրելիս։

ՇՈՒՇԱՆ.—Էհ, խօսիր մի օգտաւէտ բանի մասին։

ՍԱՀԱԿ.—Ի՞նչ օգտաւէտ բանի մասին է խօսքդ։ (Դնգդում է նրա շորերը)։

ՇՈՒՇԱՆ.—Այս ինչ է մեր կեանքը։ Փողոց եմ դուրս գալիս՝ հազարաւոր աղջիկների, գոյն-գոյն շորեր հագած, կառքերով ման գալն եմ տեսնում, քիչ է մնում՝ սիրտս տրաքուի. տուն եմ գալիս՝ աղքատութիւն, քաղցածութիւն։ Իսկ դու անվերջ խրատներ ես կարդում գլուխներիս. և դեռ այս բաւական չէ, շորերիս էլ ես չարացած աչքերով նայում։

ՍԱՀԱԿ.—Երևի ինքդ էլ ես նկատում, որ մեզպէսներին այդ չի սազում։

ՇՈՒՇԱՆ.—Ա՜խ, տէր Աստուած, ինչո՞ւ ուրիշներին կը սազի, մեզ ոչ... հը՞մ... դէ էլ ինչո՞ւ ենք կանգնել, հանենք ու այնպէս ման գանք, էլի՞։

ՍԱՀԱԿ.—(Ապշած). Ես այդպէս չեմ ասում, Շուշան. մէկ մտածիր, թէ ինչ ես խօսում։

ԳԱՅԻԱՆԷ.—Ի՞նչ ես երեխայիս երեսը թափում։

ՍԱՀԱԿ.—Դու լռի՛ր։

ԳԱՅԻԱՆԷ.—Իսկի էլ չեմ լռի. ինչո՞վ է նա պակաս ուրիշներից. բերանի համը չէ՞ հասկանում թէ՞, հեռու իրանից, աչքերն է կոյր։

ՍԱՀԱԿ.—Բայց դու նրան սովորեցրու մի լաւ բան։ Չէ՞ որ վաղը միւս օրը նա պէտք է պսակուի և հեռանայ հայրական տնից։ Դու նրան հասկացրու, որ նա այնտեղ պարտաւոր է աշխատել մեր երեսը պարզ անել։ (Շուշանին) Ի՞նչ ես ուսերըդ շարժում։

ՇՈՒՇԱՆ.—Ա՜խ, տէր Աստուած, ախր ինչի՞ է հարկաւոր այս աւելորդ խօսակցութիւնը։

ՍԱՀԱԿ.—Ուրեմն այդ ճշմարիտ է, Շուշան։ Ապա ինչո՞ւ էիր սկզբում քեզ ուրախ, բախտաւոր ցոյց տալիս, ինչո՞ւ էիր մեզ խաբում։

ՇՈՒՇԱՆ.—Ի՞նչ անէի, որ վախենում էի։

ՍԱՀԱԿ.—Իսկ հիմա էլ չե՞ս վախենում։

ՇՈՒՇԱՆ.—Ո՛ւֆ, ինչո՞ւ չես խօսում, մայրիկ։

ԳԱՅԻԱՆԷ.—Նրա հետ ի՞նչ խօսեմ. նա պահանջում է, որ դու քեզ զոհես նրա մի խօսքի համար։

ՍԱՀԱԿ.—Քի՞չ աղջիկներ կան, որ այդպէս են անում և յետոյ բախտաւորուելով՝ օրհնում են իրանց ծնողի յիշատակը։ Դու, իմ սիրելիս, դու նրա խելքով մի՛ շարժուիր, ոտքի տակ մի՛ գցիր իմ խօսքը։

ՇՈՒՇԱՆ.—Վնաս չունի... ես ինձ կը խեղդեմ, թող նա գայ և պսակուի իմ դիակի հետ։

ՍԱՀԱԿ.—Ոչ, ոչ, Աստուած մի՛ արասցէ, որդի։

ՇՈՒՇԱՆ.—Տեսնում եմ. որ էլ ուրիշ բան չի մնացել ինձ համար։

ՍԱՀԱԿ.—Մի՛ բարկանայ, սիրելիս, ես այլ ևս չեմ երկարացնի։ Տեսնում եմ՝ դու այդ փոքրիկ տեղովդ ինձնից լաւ ես հասկանում աշխարհի չարն ու բարին։

ԳԱՅԻԱՆԷ.—Դէ հերիք է, էլի՛։ Ձեռք չե՞ս վերցնելու երեխայիս օձիքից։

ՍԱՀԱԿ.—Ճշմարիտ ես ասում։ (Շուշանին) Գնա, կապիր, բեր իմ փոխնորդս։

ՇՈՒՇԱՆ.—(Գնում է ննջարան)։

## ՏԵՍԻԼ 3.

**Սահակ եւ Գայիանէ**

ՍԱՀԱԿ.—Ինչո՞ւ էի շատ սիրելուց քեզ այդքան իրես տալիս, որ այսօրուայ օրը համարձակուէիր երեսիս կանգնել և խօսքս գետին քցել։

ԳԱՅԻԱՆԷ.—Ինձ չէիր հաւատում, դէ գնա։ Փառք Աստուծոյ, հօ քո աչքով տեսար։

ՍԱՀԱԿ.—Այո, ես իմ աչքով տեսայ քո այդ նոր արարմունքդ էլ, և ինչ խօսք, որ հիացայ։

ԳԱՅԻԱՆԷ.—Ես ինչ մեղք ունեմ, տէր Աստուած, մարդ հօ չե՛մ սպանել։

ՍԱՀԱԿ.—Եթէ Աստուած ինձ ստեղծած լինէր մի արիւնարբու, մի գազան մարդ, ես քեզ վաղուց ցոյց տուած կը լինէի, թէ ի՛նչ էր քո վարձը։

ԳԱՅԻԱՆԷ.—Ինչո՞ւ, ի՛նչ եմ արել։

ՍԱՀԱԿ.—Ի՞նչ ես արել... Քսան տարով աւելի ծերացրել, ցնցոտի ես շինել ինձ։ Քո պատճառով փողոցում ամօթից գլուխս չեմ կարողանում բարձրացնել, ահա այսպէս եմ ման գալիս (գլուխը խոնարհեցնում է)։ Թո՛ղ լեզուս, կուլ տամ, թո՛ղ քո ինձ պատճառած ցաւը տանելով տանջուեմ, ինչպէս այսքան տարի տանջուել եմ։

ԳԱՅԻԱՆԷ.—Իսկի էլ դու չես տանջուել։ Եթէ մեզանից մէկը տանջուել է, այդ եղել եմ ես։

ՍԱՀԱԿ.—Սուտ ես ասում, դու ամեն բան միայն ոտքի տակ ես գցել։ Յիշի՛ր, քանի անգամ է պատահել, որ ամիսներով հետդ չեմ խօսել, քանի անգամ է պատահել, որ կամեցել եմ կախուել, խեղդուել, գլուխ վերցնել և փախչել քո երեսից։

ԳԱՅԻԱՆԷ.—Փախչէիր, էլի՛, ճանապարհդ հօ չէի՛նք կտրել, ինչո՞ւ էիր մնում։

ՍԱՀԱԿ.—Որովհետև կարծում էի, թէ մի օր կը փոշմանես և Աստուծոյ ճանապարհին կը գաս։ Իսկ դու, անմիտ, կարծում էիր՝ եթէ ես քրիստոնէին վայել համբերութիւնով և գլուխս քաշ քցած լռում եմ և տանում, ուրեմն քեզ հետ մեղսակի՛ց եմ կամ ցած արարմունքի տէր մի անլեզու անասո՞ւն։ Բայց չէիր մտածում, որ եթէ ես այդ տանում եմ, տանում եմ Նրա համար, Նրա սիրոյ, Նրա բախտաւորութեան համար։ Իսկ դու այդ բոլորի փոխարէն ինչպէ՞ս ես ինձ վարձատրել։ Ուր է՞ Նրա առաջուայ փաղաքշանքը։ Նա առաջ իմ այս սևացած ձեռքերից, այս աղտոտուած, ծխոտուած շորերից չէր խորշում։ Նա առաջ ինձ սիրով «հայրի՛կ» էր կոչում և գիրկս վազում։ Ո՞ւր կորան Նրա որդիական սէրը, Նրա քաղցր նայուածքը։ Ինչո՞ւ այդ ամենը ես այլ ևս չեմ տեսնում։

ԳԱՅԻԱՆԷ.—Ի՞նչ է, ոսկու և քարեղէնների մէ՞ջ ես պահել նրան, շքեղ հագուստներո՞վ ես դուրս բերել մարդկանց առաջ, աղախիններո՞վ ես շրջապատել նրան։ Ի՞նչ ես արել նրան բախտաւոր անելու համար։ Աչք ենք բացել, բացի ցամաք հացից ի՞նչ ենք տեսել։ Սրա-նրա բախտաւորութիւնը տեսնելով՝

*նախանձից ճաքուել ենք, տրաքուել։ Սրանից աւել ի՞նչ ես տուել մեզ։*

*ՍԱՀԱԿ.—Օ՜խ... Կորի՛ր ձայնդ, թէ չէ մի օր կը ճաքեցնես դու իմ սիրտը։* (Բռնում է սիրտը եւ նստում)։

**ՏԵՍԻԼ 4.**

**Սահակ, Գայիանէ եւ Շուշանիկ**

*ՇՈՒՇԱՆ.—*(Եկա. ննջարանից մի կապոց ձեռքին)։ *Բայց դու ի զուր ես նեղանում մեզնից։*

*ՍԱՀԱԿ.—*(Դառնութեամբ)*։ Ես ձեզնից նեղանամ։ Աստուած մի արասցէ։ Ընդհակառակը՝ ես այնքան եմ ուրախ, որ թև չունեմ թռչելու համար։ Այո՛, այո՛, մի՛ մտիկ տայ ինձ զարմացած աչքերով։ Մի յիմար ծերուկ եմ ես, ցնդուած. ինձ ի՞նչ կը պատկանի գերեզմանի խորքից վեր կենալ և ձեր գլխին խելք ու խրատ կարդալ։ Արէք՝ ինչ որ սրտներդ է ուզում. և ով որ ձեզ հակառակը սովորեցնի, այնպիսիի երեսի մէջտեղին թքեցէք։ Է՜հ, չուշանանք մեր գործին։* (Առա. կապոցը եւ այլն, գնաց աջ դռնով)։

*ՇՈՒՇԱՆ.—*(Նրա ետեւից նայելով)*։ Ա՜խ, խիղճս ինձ տանջում է... Ինչո՞ւ այդպէս արինք։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Հը՛, հիմա էլ դու՛ ինձ մեղադրիր։*

*ՇՈՒՇԱՆ.—Չէ, ես քեզ չեմ մեղադրում... Բայց չէ՞ որ նրա երեսը միմիայն կիրակի օրերն ենք տեսնում։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Ինչո՞ւ եմ քո պատճառով այսքան թուք ու մուր ուտում, որ այդպէս խօսես։*

*ՇՈՒՇԱՆ.—Դէ լաւ, մի՛ տաքանայ, մայրիկ։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Ապա ի՞նչ անեմ, որդի։ Մի՞թէ այդպէս էլ անարդար բան կը լինի։ Ուզում ես մի քիչ մարդավարի կեանք ունենալ, ամեն տեղից միայն անէծք ես լսում, յիշոց և յանդիմանութիւն։ Մենակ հօ մենք չենք, ինչո՞ւ հէնց աչքները մեզ է տեսնում։*

*ՇՈՒՇԱՆ.—Օ՜խ, Գասպարն է գալիս, մայրիկ։* (Փախա. ննջարան)։

*ԳԱՅԻԱՆԷ.—Աստուած ազատի սրա չար լեզուից։*

**ՏԵՍԻԼ 5.**

**Գայիանէ եւ Գասպար**

*ԳԱՍՊԱՐ.—*(Մտա. աջ դռնից)*։ Ճշմարիտ է, որ Շուշա-*

նիկի նշանը յետ էք կտրում։

ԳԱՅԻԱՆԷ.—Ախ, Գասպար... այդ դո՞ւ ես։ Դեռ մէկ բարեւը, հանգստացիր։ Համեցէք, նստի՛ր։ Ի՞նչ նորութիւն։

ԳԱՍՊԱՐ.—Աստուծոյ գառն մի՛ ձեւանայ. ես քեզ բան եմ հարցնում։

ԳԱՅԻԱՆԷ.—Ախր ի՞նչ է պատահել։

ԳԱՍՊԱՐ.—Ես քեզ հարցնում եմ՝ ճշմարի՞տ է։

ԳԱՅԻԱՆԷ.—Ի՞նչ ես դանակը կոկորդիս դրել. ես գիտեմ իմ աղջիկը։

ԳԱՍՊԱՐ.—Դէ էլ ինչո՞ւ ես պատէ-պատ ընկնում. բացարձակ ասա, որ իշխանազունի արժանի աղջիկ ունես, որ Աստուած մէկին գեղեցկութիւն է տուել, միւսին փող... Մի՞թէ բանը այդտեղն ես ուզում հասցնել։

ԳԱՅԻԱՆԷ.—Շատ էլ լեզուիդ չափը մի՛ մոռանայ։

ԳԱՍՊԱՐ.—Դրա՞ համար էիր ամեն օր աղջկանդ զուգում զարդարում և թղթախաղի ժամանակ մօտներս նստեցնում։

ԳԱՅԻԱՆԷ.—Ի՞նչ անենք, նա էլ ձեր քոյրը։

ԳԱՍՊԱՐ.—Մի՛ աշխատի արդարանալ. գեղեցիկ աղջիկները չեն կոտորուել մեզ համար։ Խելքի եկ և, եթէ հասկանում ես մօր պարտքը, տո՛ւր աղջիկդ իր նշանածին։

ԳԱՅԻԱՆԷ.—Ա՜խ, տէր Աստուած, այնպէս ես տաքացած, որ կարծես Օվանէսի եղբայրն ես գլուխներիս եկած։

ԳԱՍՊԱՐ.—Ես քեզ ասում եմ՝ աւելի քան եղբայրը։ Ուշքի եկ. ես այստեղ փող տանելու համար չեմ գալիս։ Ամբողջ մեր թաղը քեզ մատով է ցոյց տալիս։

ԳԱՅԻԱՆԷ.—Չի՞ կարելի իմանալ. դու ո՞վ, Օվանէսը ո՞վ։

ԳԱՍՊԱՐ.—Հարցրո՛ւ աղջկանդ, և նա քեզ կը պատմի։ Նա բոլորը գիտէ։ Ես Օվանէսի համար զոհել եմ մի անգին, մի անկարելի բան. և հիմա էլ երդւում եմ՝ կեանքս զոհ կը բերեմ, բայց ոչ ոքի չեմ թոյլ տայ մի մատով անգամ մօտենայ նրա նշանածին։ Գլուխս կը տամ, բայց չեմ թողնի։

ԳԱՅԻԱՆԷ.—Դու իմ աղջկայ վրայ ոչ մի իրաւունք չունես։

ԳԱՍՊԱՐ.—Այսօրուանից քո աղջիկը չպէտք է համարձակուի խաղի ժամանակ խաղասենեակ ոտք դնել։ Թէ չէ՝ կարող է մեծ խայտառակութիւն ծագել։ Տեսնեմ այսուհետև մայր և աղջիկ ինչպէս էք Ֆրանտ Գրիգորի չորս կողմը պըտտելու։

ԳԱՅԻԱՆԷ.—Տէր Աստուած, ի՞նչ կրակի մէջ եմ ընկել ես։

ԳԱՍՊԱՐ.—Դու ինձ ասա՝ ինչպէս է պատահել, որ Աստուած քեզ սատանայ ստեղծելու տեղ՝ կինարմատ է ստեղծել։

ԳԱՅԻԱՆԷ.— Ձեռք չե՞ս վերցնելու ինձնից։

ԳԱՍՊԱՐ.—Դէ, մի՛ մոռանայ. ինչ հարկաւոր էր՝ ես քեզ արդէն ասացի. այժմ դու գիտես։ (Գնում է աջ)։

ԳԱՅԻԱՆԷ.—Հօղեմ գիժ գլուխդ։ Քեզ պէս հազարի գլուխը կը խաբեմ։ Շուշա՛ն, շալս բեր։ (Շուշանը բերեց ննջարանից)։

## ՏԵՍԻԼ 6.

### Գայիանէ եւ Շուշան

ՇՈՒՇԱՆ.—Ո՞ւր ես գնում։

ԳԱՅԻԱՆԷ.—Ես գնամ տղերքոնց համար բան-ման գնեմ։ Հա, լա՛ւ մտիկ, եթէ Գրիգորը գալու լինի, շորերդ ու մազերդ կարգին լինի։

ՇՈՒՇԱՆ.—Ես այսպէս էլ շատ լաւ եմ։

ԳԱՅԻԱՆԷ.—Ինչքան էլ լինի, համեցէք արա, պատիւ տուր։ Տեսնում ես, որ տղերքոնց մէջին ամենքից ձեռքը բացը նա է, օգուտ տուողներս էլ նա է։ Հազիւ է Աստուած նրան հասցրել մեզ համար, պէտք է կապը ձեռներիս պինդ պահենք. հասկացա՞ր, որդի։

ՇՈՒՇԱՆ.—Դէ լաւ... բաւական է... հասկացանք։

## ՏԵՍԻԼ 7.

### Գայիանէ, Շուշան եւ Գրիգոր

ԳՐԻԳՈՐ.—(Աջից մտաւ, շիկ հագնուած)։ Բարի երեկոյ ձեզ։

ԳԱՅԻԱՆԷ.—Ախ, այդ դո՞ւ ես Գրիգոր։ (Ծածուկ Շուշանին ստիպում է ոտք ու ձեռք ընկնել, բայց նա լուռ է)։ Համեցէք, որդի, համեցէք։

ԳՐԻԳՈՐ.—Նեղութիւն մի՛ քաշէք Գայաննա Աբիսալամովնա։ (Ձեռք տուեց)։

ԳԱՅԻԱՆԷ.—Ի՞նչ նեղութիւն. ձեռքներիցս եկածը մենք միշտ պատրաստ ենք քեզ համար։

ԳՐԻԳՈՐ.—Շատ շնորհակալ եմ։ Լա՞ւ էք, մայրիկ, ողջ առողջ էք։

ԳԱՅԻԱՆԷ.—Մեզ ինչ հարցնել. դու լաւ լինես, որդի, որ մենք էլ քո շուքումդ ապրենք. դու երիտասարդ ես, գեղեցիկ։

ԳՐԻԳՈՐ.—(Շուշանին) Ձեր մայրը կոմպլիմենտ ասելն էլ է իմացել։

ԳԱՅԻԱՆԷ.—Մի՞թէ սուտ եմ ասում։ Շատերն ունեն քո քաղցր բնութիւնը։ Դու միշտ մեզ յիշում ես, ամեն երեկոյ շընորհ ես բերում, միշտ մեր աչքի վրայ էլ տեղ ունես։

ԳՐԻԳՈՐ.—Հաւատացնում եմ, որ չափազանց շնորհակալ եմ. և ես ինքս էլ, տեսնելով որ ինձ ընդունում էք այդպէս պատուով, ուրախութեամբ եմ գալիս։

ԳԱՅԻԱՆԷ.—Ներողութիւն անես, որ քո շէկին մի փոքր յարմար չէ մեր բնակարանը։

ԳՐԻԳՈՐ.—Ի՞նչ էք ասում... Եթէ իմ աչքով նայէք, այստեղ ձեզ դրախտ կը թուայ։

ԳԱՅԻԱՆԷ.—Իսկ մենք, ինչպէս ինքդ էլ տեսնում ես, թէև մի բանի տէր չենք, բայց դեռ թշնամի էլ ունենք։

ԳՐԻԳՈՐ.—Ի՞նչ արած, ո՞վ չունի թշնամի։

ԳԱՅԻԱՆԷ.—Բայց անարդարութիւն չէ՞, որդի։ Քաղցած մեռնում ես, մի օգնութեան ձեռք մեկնող չկայ. բայց հէնց որ մի գործ ես սկսում՝ մի կտոր հաց աշխատելու համար, ամեն կողմից հաջում են։

ԳՐԻԳՈՐ.—Հասկանում եմ։ Սուտ ճգնաւորների խօսքն է՝ «լաւ է քաղցած մնալ, քան թէ անել այս և այն»։ Հեշտ է ասել «քաղցած մնալ». ապա թող մէկ փորձեն, յետոյ մենք կը տեսնենք, թէ ինչ երգ կերգեն։

ԳԱՅԻԱՆԷ.—Շատ ապրես, որդի, որ այդպէս մեզ մխիթարում ես, ուրախացնում։

ՇՈՒՇԱՆ.—Ո՛ւփ, մայրիկ, դէ բաւակա՛ն է, էլի՛։

ԳԱՅԻԱՆԷ.—Ահա այդպիսի խելօք, շնորհքով բաներ խօսելով՝ մի քիչ զբաղեցրու Շուշանիկին, մինչև աղբրքոնց գալը... իսկ ես էլ հիմա կը վերադառնամ։ (Նորից ծածուկ ստիպում է Շուշանին լուռ չմնալ)։ Շուշան, վառի՛ր այնտեղ՝ ննջարանում ճրագները... (Գնաց աջ դռնից)։

### ՏԵՍԻԼ 8.

#### Շուշան եւ Գրիգոր

ԳՐԻԳՈՐ.—Սուսաննա Իսակեմնա, ձեր մայրը խնդրեց ինձ ձեզ զբաղեցնել. ուրեմն ինչի՞ց սկսել։

ՇՈՒՇԱՆ.—Երէկ երեկոյեան դուք ինձ խոստացաք ցոյց տալ մի քանի ֆօկուսներ։

ԳՐԻԳՈՐ.—Համեցէք, այդ կարող եմ։ (Առնում է խաղաթղթերը եւ նախ ցրում սեղանի վրայ)։ Ահա, առէք այս կար-

տը։ (Վերցնում է առանց նայելու)։ Նայեցէք. նիզակի երեքանոցը չէ՞ արդեօք։

ՇՈՒՇԱՆ.—(Առնում է եւ նայում)։ Այո՛, բայց...

ԳՐԻԳՈՐ.—Իսկ սա՞։ (Վերցնում է նորը եւ անում է նոյնը)։ Քառեակի եօթանոցը չէ՞։

ՇՈՒՇԱՆ.—Այո, բայց այդ ինչպէ՞ս էք իմանում։

ԳՐԻԳՈՐ.—Այժմ մեզ հարկաւոր է մի պօլիցիական։ Ահա՛, նայեցէք. պատկեր չէ՞ արդեօք, և այն էլ խաչիկի զինուորը, բեխերը սրած։

ՇՈՒՇԱՆ.—Այո՛, նա ինքն է։ Բայց դուք ինձ էլ պէտք է սովորեցնէք։

ԳՐԻԳՈՐ.—Հիմա դուք մտքներումդ կասէք, թէ ես դիմակաւորուած մի բախտախնդիր եմ և գալիս եմ մարդկանց գլուխները խաբելու։ Բայց ոչ, հաւատացնում եմ, առաջ նայեցի, յետոյ ասացի։

ՇՈՒՇԱՆ.—Ոչ, ոչ, դուք ինձ էլ սովորեցրէք։ Սովորեցրէք, թէ ինչպէս էք խաղում, որ միշտ տանում էք։

ԳՐԻԳՈՐ.—Օ՜... Սխալվում էք։ Երբ ես ընկնում եմ ինձնից ճարպիկ խաղացողների ձեռքը, միշտ տարվում եմ։ (Երկու մատով վերցնում է մի թուղթ)։ Այժմ նայեցէք։ Ի՞նչ թուղթ է սա։ (Ինքը չի նայում)։

ՇՈՒՇԱՆ.—Սրտի իննանոցը։

ԳՐԻԳՈՐ.—(Ձեռքը ճարպիկ շարժելով)։ Մի՛թէ... (Փչում է նոյն թղթի վրայ)։ Լա՛ւ նայեցէք։

ՇՈՒՇԱՆ.—Խաչի թագաւորը դառաւ։

ԳՐԻԳՈՐ.—(Նոյն)... Մի՞թէ թագաւորը...

ՇՈՒՇԱՆ.—Հիմա էլ քառեակի թագուհին։

ԳՐԻԳՈՐ.—(Նոյն)։ Եւ ո՞չ զինուորը։

ՇՈՒՇԱՆ.—Այո՛, ի կ որ զինուորը... Հրաշք է, Աստուած վկայ։

ԳՐԻԳՈՐ.—(Նոյն)։ Իսկ ես կարծեցի իննանոցը...

ՇՈՒՇԱՆ.—Հա՛-հա՛-հա՛... Այո՛, իսկ որ իննանոցը։ Ախր այդ ինչպէ՞ս էք անում։

ԳՐԻԳՈՐ.—Դէ այժմ խօսենք ուրիշ բան, թէ չէ՝ շատ կը սովորես, շուտ կը պառաւես։ (Խառնում է թղթերը)։

ՇՈՒՇԱՆ.—Ոչ, ոչ, ոչ. դուք անպատճառ ինձ էլ պէտք է սովորեցնէք։

ԳՐԻԳՈՐ.—Բայց մեզ կարող են խանգարել։

ՇՈՒՇԱՆ.—Անցնենք այնտեղ։ (Վերցրեց թղթերը, գնացին ն չարան)։ Այստեղ մեզ ոչ ոք չի խանգարի. տղերքը դեռ շու-

տով չեն գայ։ (Ծածուկ աջ դուանը նայեց, յետոյ ննջարանի դուռը ծածկեց)։

## ՏԵՍԻԼ 9.

**Գասպար, յետոյ Գրիգոր, Շուշանիկ, Մարգար եւ 3—4 խաղացողներ**

ԳԱՍՊԱՐ.—(Մտաւ մենակ աջից)։ Ոչ ոք չկա՞յ։ Մի՞թէ ես սխալուեցի։ Ոչ, ես նրան տեսայ. նա ամենից ծածուկ շրջեց անկիւնը և երևի ի հարկէ այստեղ մտաւ։ Գուցէ այստեղ են։ (Մօտեցաւ խաղասենեակի դուան եւ ականջ դրեց)։ Աստուած մի արասցէ։ (Ապշեց)։ Ա՜... Ահա թէ ինչ։ Գրիգոր Ստեփանիչ... Գրիգոր Ստեփանիչ։ (Խփեց դուանը)։

ԳՐԻԳՈՐ.—(Մտաւ խաղասենեակից)։ Ի՞նչ է պատահել։ (Սառն) Ա՜, Գասպար Իվանիչ... ի՞նչ կայ։

ԳԱՍՊԱՐ.—Հը՜... ոչինչ։ Տղերքը գալիս են... ներեցէք. ես մոռացայ քաղաքավարութեան ձևերը։ (Մտնում են տղերքը աջից)։

ԳՐԻԳՈՐ.—Ոչինչ, մենք հէնց ձեզ էինք սպասում։

ՇՈՒՇԱՆ.—(Եկաւ ննջարանից)։ Ի՞նչ է պատահել... ես վախեցայ։

ԳԱՍՊԱՐ.—Ա՜խ, ներեցէք ի սէր Աստուծոյ։

ԳՐԻԳՈՐ.—Երևի վազելով էք եկել. հանգստացէք մի փոքր, թէ չէ՝ այդ ի՞նչ է, ձեր երեսին գոյն չկայ։ (Տղերանց)։ Համեցէք խնդրեմ։ (Գնաց ննջարան, տղերքն էլ հետեւեցին)։

ԳԱՍՊԱՐ.—(Շուշանին)։ Ուշքի եկէք. բաները շատ էլ չեն սպիտակացնի։

ՇՈՒՇԱՆ.—Ի՞նչ է պատահել։

ԳԱՍՊԱՐ.—Ոչ բարով՝ նշանուած աղջիկ էք դուք. մի՞թէ չէք տեսնում, որ ես ինձ կորցրել եմ։

ՇՈՒՇԱՆ.—(Վախեցած)։ Ի՞նչ ես ուզում ինձնից... (Փախաւ ննջարան եւ դուռը ծածկեց)։

## ՏԵՍԻԼ 10

**Գասպար եւ Գայիանէ**

ԳԱՍՊԱՐ.—(Գայիանեն, ունենալով ձեռքին զնած բաներ, մտաւ աջից)։ Ա՜, դու եկար վերջապէս։

ԳԱՅԻԱՆԷ.—Ի՞նչ է, ի՞նչ է եղել քեզ։ (Դնում է սեղանի վրայ ձեռքի բաները)։

ԳԱՍՊԱՐ.—Լսի՛ր, կախարդ սատանայ. վճռուած է, քեզ նման վարպետ կնոջ աղջիկը էլ պէտք չէ Օվանէսին։

ԳԱՅԻԱՆԷ.—Ի՞նչ ես գիժ գիժ դուրս տալիս։

ԳԱՍՊԱՐ.—Այո, այո, չպէտք է խաբել նրան։ Նա մի մաքուր և անարատ տղայ է։ Նա նման չէ մեզ... այս աւազակ և չարլատան չներիս, նա չպէտք է պսակուի քո աղջկայ հետ. հակառակ դէպքում՝ ես այս դանակը կը խրեմ նրա փորը և աղիքները ցրիւ կը տամ։ Աւելի լաւ է մի յիսուն կոպէկանոց սիրուհի ունենայ նա, քան թէ յիմարուի... և...

ԳԱՅԻԱՆԷ.—Լիրբ անզգամ, ինչպէս ես համարձակվում։

ԳԱՍՊԱՐ.—Ձայնդ։ Էլ խօսելու ժամանակ չէ։ Դէ, գնա այնտեղից դուրս քաշիր աղջկանդ, թէ չէ՝ արիւնը գլխովս է տալիս։

ԳԱՅԻԱՆԷ.—Դու ինձ վախեցնում ես. ի՞նչ է պատահել, որտեղ է երեխաս։

ԳԱՍՊԱՐ.—Այնտեղ է «երեխադ», նրա մօտ. նայի՛ր, գուցէ հարկաւոր լինի այնտեղ ուղղել։

ԳԱՅԻԱՆԷ.—Խելագարուել ես, Գասպար։

ԳԱՍՊԱՐ.—Այո, դու ճշմարիտ ես ասում. կարող է պատահել, որ ես խելագարուեմ։ Լսի՛ր, պառաւ, գուցէ երբ մերժելու լինես Օվանէսին, քեզ հարկաւոր լինի մի պատրուակ։ Հըմ, չէ՞ որ երևելի վարպետն ես սուտեր և պատրուակներ հընարելու մէջ։ Ուրեմն չմոռանաս. ասա նրան՝ «սիրական ունես». և եթէ հարկաւոր լինի մի վկայ, ցոյց տուր ինձ և ասա, թէ ես եմ ասել։ Դէ, շուտ, գնա, դուրս քաշիր նրան այնտեղից... (Ցած)։ Գուցէ ճմլուած լինի անկողինը... մարդիկ կան այնտեղ, շուտ, ամօթ է։ (Քաշւում է բեւից) Ե՛կ, շուտ արա։

ԳԱՅԻԱՆԷ.—Ինչե՞ր է խօսում յիմարը։ (Մտան ննջարան, քիչ յետոյ Գասպարը ճանապարհ տուեց բեմ գալու Շուշանին)։

### ՏԵՍԻԼ 11

Շուշան եւ Օվանէս

ՇՈՒՇԱՆ.—(Մենակ)։ Սարսափելի է։ Անպիտանի աչքերը կատաղած գայլի աչքերի են նման։

ՕՎԱՆԷՍ.—(Մտաւ աջ դռնից)։ Բարի երեկոյ, Շուշանիկ. ի՞նչ է պատահել, սիրելիս։ Ծնողներս եղել են այստեղ. նրանք ասացին, որ դու հիւանդ ես։ (Ձեռք է տալիս)։

ՇՈՒՇԱՆ.—Ինչո՞ւ պէտք է հիւանդ լինէինք. փառք Աստուծոյ։

ՕՎԱՆԷՍ.—Այդ ի՞նչ եղանակով ես խօսում ինձ հետ։ Չլինի՞ նեղացած ես ինձանից։

ՇՈՒՇԱՆ.—Ի՞նչ նեղանալու բան կայ։

ՕՎԱՆԷՍ.—Ի հարկէ, մեզ ի՞նչ կը պատկանի միմեանցից նեղանալ։ Արի նստենք միասին։

ՇՈՒՇԱՆ.—Նստում էք՝ նստեցէք, ձեզ ո՞վ է խանգարում։

ՕՎԱՆԷՍ.—Դէ լաւ. մօտեցիր, տուր ինձ քո ձեռքը։ Այդ ի՞նչ աչքերով ես ինձ նայում։

ՇՈՒՇԱՆ.—Օ՜ֆ, ի՞նչ էք ուզում ինձանից։

ՕՎԱՆԷՍ.—Իմ սիրելի։ Եթէ նեղացած ես ինձնից, որ ամբողջ օրը քո մօտ չեմ եկել, սխալվում ես։ Ճիշտը ասեմ՝ ցերեկով ամաչում եմ. բացի այդ, գործի ժամանակ ամբողջ օրը ոտքի վրայ շիտակ կանգնելուց յոգնած եմ լինում այնպէս, որ անհամբեր սպասում եմ, թէ երբ պէտք է կիրակին գայ, որ մի լաւ հանգստանամ։ Դժուար բան է, Շուշանիկ։ Սրա կապրիզը տար, նրա կապրիզը տար, կեղծ ժպտա, կեղծ քաղաքավարութիւն արա, խղճիդ ընդդէմ սուտ ասա և գովիր այն ապրանքը, որը գովասանքի և ոչ մի արժանաւորութիւն չունի։ Իմ բնաւորութեան համեմատ գործ չէ, Շուշան. և եթէ մի անգամ ընկած չլինէի, կը թքէի և կը հեռանայի։ Սակայն ես բոլորը մոռանում եմ, երբ քեզ եմ յիշում։ Ի՜նչ քաղցրութիւն և ինչ երջանկութիւն է՝ լինել նշանուած և միևնոյն ժամանակ սիրահարուած։ Բայց դու ինչո՞ւ ես ինձնից այդպէս խորշում։ Հայրս ասում էր՝ կողքդ է ծակում, ատամդ է ցաւում, և թէ դու հիւանդ ես. ճի՞շտ է։

ՇՈՒՇԱՆ.—Ա՜խ, ձեռք վերցրէք ինձնից։ Հիւանդ, հիւանդ, հիւանդ։

ՕՎԱՆԷՍ.—Իմ սիրելիս, ինչո՞ւ ես բարկանում։ Եթէ ձանձրացնում եմ, ասա, որ ես հանգիստ թողնեմ քեզ։ Կամենում ես՝ դու պառկիր, իսկ ես մահճակալիդ մօտ կը նստեմ կողքիդ, և մենք կը խօսենք։ Կուզես՝ պատմեմ քեզ նորութիւններ։ Ես նկատել եմ, որ մարդիկ դէպի ամուսնացողները մի առանձին յարգանքով են վերաբերվում։ Տես, երէկ պարոնս շնորհաւորեց նշանադրութիւնս, յունուարից խոստացաւ աւելացնել ռոճիկս։ Սիրելիս, գուցէ ես քեզ ձանձրացնում եմ, որ բոլոր ժամանակ միմիայն իմ մասին եմ խօսում։

ՇՈՒՇԱՆ.—Ինձ համար միևնոյն է, ես ձեզ ականջ չեմ դնում։

ՕՎԱՆԷՍ.—Ա՜խ դու իմ խորամանկ գեղեցկուհիս. և դու կամենում ես, որ ես քեզ հաւատամ։

ՇՈՒՇԱՆ.—Շատ հարկաւոր է. կուզէք հաւատացէք, կուզէք ոչ։

ՕՎԱՆԷՍ.—Դէ լաւ, թող այդպիսի կատակները։

ՇՈՒՇԱՆ.—Իսկի էլ կատակ չեմ անում։

ՕՎԱՆԷՍ.—Լսիր, սիրելիս, ես մի փոքր զգայուն եմ, և կարող է վրաս վատ ազդել։

ՇՈՒՇԱՆ.—Ուրեմն աւելի լաւ է ոչինչ չխօսել. պրծաւ գնաց։

ՕՎԱՆԷՍ.—Ապա ի՞նչ անենք, եթէ չխօսենք։

ՇՈՒՇԱՆ.—Օ՜հ, ի սէր Աստուծոյ վերջացրէք. ես գործ ունեմ։

ՕՎԱՆԷՍ.—Մի՞թէ քեզ համար անհնարին է մի քանի րոպէ նուիրել քո նշանածին։

ՇՈՒՇԱՆ.—Հը՛մ... նշանած։

ՕՎԱՆԷՍ.—Ի՞նչ է նշանակում քո այդ քմծիծաղը։

ՇՈՒՇԱՆ.—Ինչ ուզում էք՝ այն էլ նշանակում է։

ՕՎԱՆԷՍ.—Դէ լաւ, հաշտուենք։ (Բռնում է նրա ձեռքը)։ Այդ ի՞նչ է, ո՞ւր է նշանիդ մատանին։

ՇՈՒՇԱՆ.—Սպասեցէք, ես իսկոյն կը վերադարձնեմ։

ՕՎԱՆԷՍ.—Մտածո՞ւմ ես, թէ ինչ ես ասում... Նա միշտ պէտք է մատիդ լինի։ Տեսնում ե՞ս (իր մատանին ցոյց տալով). սա այստեղից միմիայն... ոչ, ոչ, կամ յաւիտեան մատիս, կամ կեանքս էլ հետը։ Դէ՛ գնա՛, վեր առ մատանիդ և անցրու մատիդ։ Գնա՛, Շուշան, գնա՛, սիրելիս, թէ չէ՝ կը նեղանամ և, Աստուած վկայ, շատ կը նեղանամ... գնա՛...

ՇՈՒՇԱՆ.—Չեմ ուզում։

ՕՎԱՆԷՍ.—Հը՛մ... երեխա՛յ։ Դու խելագարուե՞լ ես. մտածո՞ւմ ես, թէ ինչ դաժան կատակ ես անում։

ՇՈՒՇԱՆ.—Իսկի՛ էլ կատակ չեմ անում։

ՕՎԱՆԷՍ.—Ճի՞շտ... (Նորից տատանուելով)։ Ի՞նչ պատահեց ինձ (ցնցելով իրան)։ Ուրեմն կատակ չե՞ս անում։ (Վճռողաբար)։ Այդ բանը ես քեզ չեմ ների... ի՞նչ եմ ասում։ Լսիր, սիրելիս, լսի՛ր, անփորձ աղջիկ...։ Ասա՛, որ դու երեխայ ես, որ անզգուշութեամբ թռաւ բերանիցդ այդ խօսքը։ (Բռնում է նրա ձեռքը)։

ՇՈՒՇԱՆ.—Ես ոչինչ չեմ ասի։

ՕՎԱՆԷՍ.—Չե՞ս ասի...

## ՏԵՍԻԼ 12

Շուշան, Օվանէս և Գայիանէ

ԳԱՅԻԱՆԷ.—(Մտաւ խաղասենեակից)։ Այդ ի՞նչ է, Օվանէ՛ս։

*ՇՈՒՇԱՆ.—Բա՛ց թողէք, բա՛ց թողէք։* (Ազատուելով գնաց ննջարան)։

**ՏԵՍԻԼ 13**

Օվանէս եւ Գայիանէ

*ՕՎԱՆԷՍ.—Ի՞նչ է ասում քո աղջիկը, ի՞նչ է ասում քո աղջիկը։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Էլ ի՞նչ պիտի ասի, որդի։ Չեմ իմանում ո՛ր չար կախարդն է գիր արել։ Աչքերին բաներ են երեւում, քնի մէջ մեռելների հետ է խօսում։ Քանի անգամ գիշերը ջրհորի բերանից եմ յետ բերել։ Ասում է՝ «ինձ այնտեղից ձայն է կանչում»։* Աստուծոյ *սիրուն, որդի, ինչ տուել ես՝ վեր ա՛ռ տա՛ր. աղջիկս ձեռքիցս գնում է։ Էլ խաւարեց ինձ համար աշխարհը։* (Լալով)։ *Մի՞թէ այս օրի համար էի մեծացրել քեզ, իմ փայլուն ծաղիկ։*

*ՕՎԱՆԷՍ.—Չեմ իմանում, արդեօք զառանցանքի մէ՞ջ ես գտնվում ես։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Մի՞թէ չնկատեցիր նրա անկապ անկապ խօսքերը։ Ի՞նչ կը լինի իմ վիճակը, եթէ նա խելագարուի։*

*ՕՎԱՆԷՍ.—Նա չի խելագարուի, այլ ես...*

*ԳԱՅԻԱՆԷ.—Դու տղամարդ ես, որդի. քեզ համար ի՞նչ կայ։ Դու կը գնաս՝ քեզ համար մի ուրիշ աղջիկ կը գտնես։*

*ՕՎԱՆԷՍ.—Մի՛ ասի ինձ այդ խօսքերը... Մի՞թէ չես նկատում, որ ես ամբողջ մարմնովս դողում եմ...*

*ԳԱՅԻԱՆԷ.—Մեզանում մեղք չկայ, որդի, անիծուի չար կախարդի գլուխը։*

*ՕՎԱՆԷՍ.—Լսի՛ր. եթէ այդ չար կախարդը դու չես, քու հասակիդ չի վայելի այդ սատանայական սուտերը, այդ առասպելները։ Շո՛ւտ, գնա՛ նրան խելքի բե՛ր. գնա՛ հասկացրո՛ւ նրան, որ ես ուրիշների նման չեմ եղել, որ սա իմ առաջին սէրն է, մաքուր և անարատ իմ առաջին սէրը. գնա՛, աղաչում եմ, խելքի՛ բեր նրան... ես կը ներեմ նրան։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Ես ի՞նչ կարող եմ անել, ինչո՞ւ էք ինձ երկու կրակի մէջ այրում։*

*ՕՎԱՆԷՍ.—Դու ոչինչ չե՞ս կարող անել, դո՛ւ, որ մայրն ես։* (Բռնում է նրա թեւերից)։

*ԳԱՅԻԱՆԷ.—Բա՛ց թող ինձ... ես մայր չեմ։*

*ՕՎԱՆԷՍ.—Ապա ի՞նչ ես դու, ո՞վ ես դու։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Բաց թող, ասում եմ. ի՞նչ ես թեւերս կոտրտում։*

ՕՎԱՆԷՍ.—(Թաց թողնելով)։ Այն ժամանակ... ոչ, ոչ... իմ ձեռը չի բարձրանայ նրա վրայ։ Դէ գոնէ ասա՛ ճշմարիտը, ի՞նչ է պատճառը։

ԳԱՅԻԱՆԷ.—Մենք քեզանից այդպիսի բան չէինք սպասում, Օվանէս։

ՕՎԱՆԷՍ.—Ինչի՞ մասին է խօսքդ, շո՛ւտ։

ԳԱՅԻԱՆԷ.—Ես իմ աղջիկը մի սիրուհի պահողի համար չեմ մեծացրել։

ՕՎԱՆԷՍ.—Դու իսկոյն պէտք է յայտնես, թէ ո՞ր շան ծնունդն է համարձակուել այդ սուտը հնարել։

ԳԱՅԻԱՆԷ.—(Մօտենալով ննջարանի դռան)։ Խօսք տուր, որ խայտառակութիւն չես սարքի։

ՕՎԱՆԷՍ.—Ուրեմն այստեղ է այն լիրբ ստախօսը (Մօտենում է ննջարանի դռանը)։

ԳԱՅԻԱՆԷ.—Սպասիր... (Ձի թողնում)։

ՕՎԱՆԷՍ.—(Հրում է նրան մի կողմ)։ Հեռացի՛ր, ասում եմ. էյ, ո՞վ է համարձակուել։ (Խփում է։ Ննջարանի դռները բացվում են, եւ երեւում են լոյսի մէջ նստոտած խաղացողները, որոնք իսկոյն ոտքի են կանգնում)։ Այդ ի՞նչ է։

ԳԱՅԻԱՆԷ.—(Գասպարին, որ թղթերը ձեռին առաջ է եկել)։ Դէ՛, տուր նրա պատասխանը։

ՕՎԱՆԷՍ.—Ինչպէ՞ս. նա՞ է ասել։ Դո՞ւ ես ասել, Գասպար, դո՞ւ...

ԳԱՍՊԱՐ.—Այո՛... ես։

ՕՎԱՆԷՍ.—Դո՞ւ, դո՞ւ։ (Բռնում է երեսը, յետ-յետ է գնում, ընկնում մի աթոռի վրայ, լալիս)։ Մի՛ նայիր ինձ այդպէս, մի՛ նայիր։ (Ամենքը ապշած են։ Գասպարի ձեռքից թափվում են թղթերը)։

ՎԱՐԱԳՈՅՐ

# ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆ ԵՐԿՐՈՐԴ

*Բակ։ Աջ կողմը՝ մի դուռ մի պատուհանով տնակ, որի առաջ գետնից քիչ բարձր պատշգամբ։ Բակի ձախ կողմը պարտէզ։ Խորքում կօշկակարի սեղան՝ գործիքներով՝ և չորս կողմը 4—5 կօշկակարներ նստած։ Մէջտեղի պատի վրայ արհեստանոցի ետևի դուռը, յետոյ էլ պատուհան։ Ամառուայ շոգի պատճառով գործում են բակում։ Խանութի ներսից բեմ եկողները նախ երևում են պատուհանից։ Պարտէզի հնացած ցանկապատի վրայ և ծառերից մինչև պատշգամբի սիւնը թոկ, վրան լուացք կախած։ Երեկոյի մութը կոխում է, սկզբից լսվում է կօշկակարի կաշի ծեծելու և ետևից զանգի ձայներ։*

## ՏԵՍԻԼ 1

**Օվանէս, Յարութիւն, Մարիամ, Արմենակ եւ կօշկակարներ**

(Օվանէսը պատշգամբի ծայրին նստած՝ ծխում է, ապուշի նման, զուռնատ, մռայլ, գզգզուած։ Յարութիւնը գոգնոցով, ակնոցներով՝ գործում է։ Մարիամը, որ լուացքներն էր տնտղում մօտեցաւ Օվանէսին)։

*ՄԱՐԻԱՄ.—Ապա ի՞նչ անեմ, որդի. վաղ առաւօտեան վեր էիր կենում, գնում գործիդ, ուշ երեկոյեան ուրախ-ուրախ վերադառնում էիր. ծնողդ էլ տեսնելով՝ ուրախանում էր, որ հասած որդի ունի, սև օրի համար մի յուսատեղի։*

*ՕՎԱՆԷՍ.—Ա՜խ, մայրիկ, բաւական է. գոնէ մի օր թողէք ինձ հանգիստ մնամ։*

*ՄԱՐԻԱՄ.—Ի՞նչ անեմ, որդի. մի՞թէ այս օրուայ համար եմ մեծացրել քեզ։*

*ՕՎԱՆԷՍ.—Ա՜խ, գլուխս տրաքվում է... Մի՞թէ մի ուրիշ հոգս չունէք։*

*ՄԱՐԻԱՄ.—Մեր հոգսն էլ դու ես, սիրելիս. չէ՞ որ մեր աչքի սև ու սպիտակն էլ դու ես։*

*ՕՎԱՆԷՍ.—Դէ հանգստացիր, մայրիկ, բաւական է. ախր մի՞թէ ամեն օր միևնոյնը կրկնելով չկշտացար։ Հաւատացնում եմ, շատ խօսէք՝ գլուխս վեր կառնեմ կը կորչեմ այս քաղաքից։*

*ՄԱՐԻԱՄ.—Չխօսեմ ի՞նչ անեմ, քար հօ չէ սիրտս. չէ՞ որ սև կապոյտ մայր եմ։ Մի՞թէ ես քեզ նրա համար եմ մեծացրել, որ գիշերները ուշ տուն գալդ, արբած լինելդ տեսնեմ։*

ՕՎԱՆԷՍ.— Ոչինչ, կեանքումս շատ եմ ծիծաղել սուտ սուտ վշտից աքբեցողների վրայ, հիմա էլ հերթը ինձ է եկել։

ՄԱՐԻԱՄ.—Ա՜խ, Օվանէս, աւելի լաւ է կրակ տաս ու ինձ սպանես, քան թէ քո բերանից ես այդպիսի խօսքեր լսեմ. մի՞թէ աշխարհը քանդվեց քեզ համար, որդի։

ՕՎԱՆԷՍ.—(Դառն)։ Ո՞վ է ասում. ընդհակառակը՝ բախտը բացել է իրա դուռը և մեզ համեցէք է անում։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—(Մօտենալով)։ Ինչո՞ւ համար ես խօսեցնում նրան։

ՄԱՐԻԱՄ.—Ապա ինչ անեմ ջուր տարած. մի՞թէ ծնող չեմ ես։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Նա ի՞նչ է հասկանում, թէ ինչ ասել է ծնող։

ՄԱՐԻԱՄ.—Մի աղջկայ համար օրներս այսպէս սև է արել։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Դու կարծում ես՝ այս պատմութիւնը մի աղջկայ պատճառով է։

ՄԱՐԻԱՄ.—Ապա ինչ է։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Պատճառը այն է, որ նա սիրտ չունի, ուրիշի համար այրուող սիրտ։ Պատճառը այս ապականուած ժամանակն է։ Մէկ աչքդ բաց, տես ինչ սերունդ է առաջ եկել։ Ամենքը ոտքի են կանգնել, ամենքը աչքները արիւն կոխած իրաւունք են բղաւում, բայց ուզում են ոչինչ չարած ապրել ազատ, անհոգ՝ ինչպէս երկնքի թռչունը։ Ահա, մտիկ արա։ (Ցոյց տուաւ իր բանուորներին)։ Սրա կտորը նրանք չե՞ն։ Սրանք բոլորը մի խմորից են հունցած, և ես երեսներին եմ ասում, Մարիամ. խօսքով երկնքից աստղեր վեր կը բերեն, իսկ ձեռքով, եթէ հնար լինի, փետուր չեն ուզի շարժել։

ՄԱՐԻԱՄ.—Դէ լաւ, դու էլ այս ժամաժամքին այն խեղճերին մի՛ խառնի մէջտեղ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ապա ինչ անեմ, երբ ոտնակոխ է եղել ամեն ինչ. էլ ոչ օրէնք կայ, ոչ կարգ, ոչ մեծ կայ, ոչ փոքր։ Այն փչանալու Մարգարն էլ տես գլխիս ինչ է բերել։ Վաղը առաւօտ կօշիկ պիտի յանձնեմ, կօշիկը պատրաստ, իսկ կրունկ կապելը թողել է և առաւօտը ժամը 11-ից կորել է, էլ չկայ։ Եւ ո՞վ է սրանց ամենքին գժուացնողը. իմ հարազատ եղբօր որդին, այն փչանալու Արամը։

ՕՎԱՆԷՍ.—Նրա՞ն էլ չես հաւանում։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ինչո՞ւ չես մի փոքրիկ երեխայ, որ բռնէի ականջից և ապտակէի բերանից։

ՕՎԱՆԷՍ.—Ինչո՞ւ համար։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Նրա համար, որ յիշեցնէի քեզ քո չափը. Եթէ դու լինէիր մի ճնճղուկի ձագ, ես քեզ վաղուց ասած կը լինէի՝ «Բաւական է որքան պահել-մեծացրել եմ քեզ։ Այժմ, երբ թեւերդ աճել են և դու ինքնագլուխ կարող ես թռչել, գնա՛ թռի՛ր, մեր մէջ այլևս ոչ մի կապ չկայ»։ Բայց աստուածութիւնը քեզ բանական մարդ է ստեղծել, ուրեմն մտածի՛ր, թէ ի՞նչ ես եղել մինչև հիմա մեզ համար. փայտի ձի, որին հեծնողը ինքը պիտի առաջ քաշի։ Ահա մեծացրել, քեզ ինչ հասակի ենք հասցրել, բայց ի՞նչ օգուտ ենք ստացել քեզանից մեր կեանքում։ Ասա՛ ինձ, մի՞թէ կամենում ես հիմա էլ թքել այն ջրհորի մէջ, որտեղից 27 տարի շարունակ ջուր ես խմել։

ՄԱՐԻԱՄ.—Ո՜ւֆ, տէր Աստուած...

ՕՎԱՆԷՍ.—Ահա թէ խօսքը նորից որտեղ եկաւ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ապա ինչի՞ մասին խօսեմ։ Ձեռքերս դողում են և ես այլևս հազիւ եմ կարողանում գործիք բռնել։ Ահա, գնա տես, մի կրունկ կապելու համար մարմնիս մէջ ոյժ չէ մնացել։ Ես կարծում էի, թէ մի օր վերջապէս կը գաս, կը կանգնես քո զառամեալ հօրդ առաջ և կասես. «Հայր, բաւական է, 55 տարի շատ ատամներով կաշի ձգելով ատամներդ են թափուել, շատ կռացած գործելուց՝ աչքերիդ լոյսն է նուազել, թիակներիդ ոսկորները դուրս ցցուել. բաւական է. գնա՛ և կեանքիդ վերջին օրերը մի քիչ էլ դու հանգստացիր, որովհետև խեղճ ես, յոգնել ես արդէն»։ Ո՞ւր է, ինչո՞ւ քեզանից ես այդ չեմ լսում։

ՕՎԱՆԷՍ.—Այդ բոլորը շատ ճշմարիտ ես ասում։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ուրեմն ինչո՞ւ ես ինձ սրանց ձեռքին գերի շինել։ Է՜յ, վառեցէք մոմերը։ (Բանուորները վառեցին մի քանի եկեղեցական մոմեր՝ գործիքի սեղանի վրայ)։

ՕՎԱՆԷՍ.—Բայց մի՞թէ ես այդպէս էի և առաջ. մի՞թէ մոռացել էք, որ կար ժամանակ, երբ ես էլ ոսկի երազներ էի տեսնում։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Իսկ հիմա ի՞նչն է խանգարել քո քունը։

ՕՎԱՆԷՍ.—Եւ այդ հարցնում ես դո՞ւ։

ՄԱՐԻԱՄ.—Նա ի՞նչ անէր, որդի. հօ նա քո վատը ուզենալով չարաւ այդ բանը։ Ի՞նչ անենք, որ աներեսների հանդիպեցինք. վեր կենայինք մորթէի՞նք նրանց։

ՕՎԱՆԷՍ.—Իսկ նրանց արածը. մայրիկ, մի՞թէ սա առանց դանակի մարդ մորթելուց պակա՞ս է մի բանով։

ՄԱՐԻԱՄ.—Մի՛ ասի, որդի, նրանք հօ քեզ չեն սպանել։

ՕՎԱՆԷՍ.—Աւելի լաւ է մարդուն սպանել, քան կենդանի թաղել։ Նրանք ինձ փակել են տան անկիւնում, նրանք ինձ ամբողջ քաղաքի աչքին ծիծաղի առարկայ են շինել, և այդ՝ ձեր կարծիքով ոչինչ։ Ազատ ազատ օդի մէջ թռչում էի. Նրանք կտրտեցին թևերս, նետով խփեցին սրտիս մէջ տեղին... Իսկ դուք ինչ-որ որդիական պարտքի մասին էք խօսում։ Իսկ այն մասին, որ ես մարդ եմ... վիրաւորուած... է՜հ ինչ պահանջեմ ձեզնից, երբ վաղուց է արիւնը սառել ձեր երակների մէջ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Իսկ դու, որ արիւնդ եռում է երակներիդ մէջ, ի՞նչ պիտի անես։

ՕՎԱՆԷՍ.—(Յաղթուած)։ Ահա դուք ինքներդ էլ հօ տեսնում էք. պատիւս ցեխի հետ հաւասարուելուց յետոյ էլ, ես ձեռքերս ծալած նստած եմ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Է՜հ, Մարիամ... եթէ դու ժամանակին բացած լինէիր իմ աչքը, չէր լինի և այս պատմութիւնը։

ՕՎԱՆԷՍ.—Ինչի՞ մասին է խօսքը։

ՄԱՐԻԱՄ.—Էհ՛, թողէք մնայ, այս կիրակնամուտին ինչ կը պատկանի մեզ ուրիշներից չարախօսել։

ՕՎԱՆԷՍ.—Եթէ դու մի բան գիտէիր, ինչո՞ւ ժամանակին չէիր մտածում այդ մասին։ Թէ՞ ինձ մխիթարելու համար ես հնարում այդ սուտը։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Զափ դի՛ր լեզուիդ. ինչպէ՞ս ես համարձակվում իմ առաջ նրան այդպիսի քաշ խօսք ասել։

ՄԱՐԻԱՄ.—Աստուծոյ սիրոյն, մի՛ կռուի, առանց այն էլ երեխայիս սիրտը դառնացած է։

ՕՎԱՆԷՍ.—(Խիստ)... Ա՜հ. շատ ձեզ հետ գլուխ դնողը գժուել կարող է, գժուել։ (Բարկացած գնում է աջ դռնից)։

ՄԱՐԻԱՄ.—Մա՛րդ, ինչո՞ւ ես կրակի վրայ իւղ ածում։ Արամին ես ինքս եմ խնդրել, որ մէկ մէկ գայ, խօսի հետը։ Լեզուիդ տէրութիւն անել չես կարողանում։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Գնա՛, գնա՛ նրա ետևից, փաղաքշիր, սիրտը առ. տեսնում ես, որ պառաւել եմ, խելքս տանուլ եմ տուել։

ՄԱՐԻԱՄ. — Դէ հանգստացիր, տղերքը նկատում են։ (Գնաց աջ)։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Խօսում ես՝ վայ է, չես խօսում՝ վակլախ է։

## ՏԵՍԻԼ 2

### Յարութիւն, Արմենակ եւ բանուորներ

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Իսկ դուք ինչու էք բերաններդ ծռել պարապ նստել։

ԱՐՄԵՆԱԿ.—Ապա ինչ անենք։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ինչպէ՞ս թէ ինչ անէք։

ԱՐՄԵՆԱԿ.—Չէ՞ որ շաբաթ երեկոյ է, պէտք է տուն գնալ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Իսկ ձեզ գործ յանձնեցի, ինչ արիք։ (Խլում է մէկի ձեռքից կօշիկը)։ Այդ ինչ է, մի կրունկ կապելն էլ չէք կարողացել, նոյն իսկ ձեռք էլ չէք տուել. ինչ է նշանակում այդ։

ԱՐՄԵՆԱԿ.—Ով սկսել է, նա էլ կարող է վերջացնել։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Քեզ ո՞վ է հարցնում։ (Շպրտում է կօշիկը մի կողմ)։

ԱՐՄԵՆԱԿ.—Միեւնոյն է, մենք ամենքս էլ մէկ ենք։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ա՛, ուրեմն խօսքներդ մէկ էք արել, ուրեմն վճռել էք երեսիս կանգնել։ Չէ, ասացէք ինձ. ինչու էք Աստուծոյ աչքից ընկել։ Խիստ եմ եղել, ասացէք՝ «խիստ ես եղել». վատ եմ եղել, ասացէք՝ «վատ ես եղել»։

ԱՐՄԵՆԱԿ.—Ո՞վ է ասում, որ դուք վատ մարդ էք։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ապա եթէ լաւ եմ եղել, ինչու էք ոտքներդ բարձրացրել։ Այդ ինչ ապստամբութիւն է։

ԱՐՄԵՆԱԿ.—Ինչու պիտի ապստամբուենք. ինչպէս ուրիշները՝ այնպէս էլ մենք։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Շատ լաւ. ինչպէս ուրիշները՝ այնպէս էլ դուք։ Ապա ինչու չէք օրինակը ինձանից վերցնում. չէ՞ որ աշակերտը պարտաւոր է օրինակը վերցնել իր վարպետից։ Լսեցէք։ Եօթ տարի աշակերտ ժամանակս գործել եմ օրական 16 ժամ։ (Աշակերտները տրտունջի շարժումներ են անում)։ Վարպետի տան բոլոր գործերը ես եմ արել, և քիչ է մնացել, որ տան շորերն էլ ինձ լուանալ տան։ (Նոյն)։ Ամիսներով գլուխս տաք ջրի և սապօնի երես չի տեսել։ Քնել եմ խանութի ետեւում, կեղտոտ անկողնում, ձմեռը ցրտից սարսռելով։ Շորերս պատռտուած, մարմինս աղտոտուած, բայց ուֆ չեմ արել։ (Նոյն)։ Չարչարուել եմ շան նման և նրա նման էլ տիրոջս հաւատարիմ եմ եղել։ Իսկ դո՞ւք։

ԱՐՄԵՆԱԿ.—Մի նեղանաք, վարպետ։ Այդ բոլորը անցած

ժամանակի բաներ են։ Տղերքը միացած ասում են՝ «մենք այդպէս չենք ուզում, որովհետև մենք էլ մարդ ենք և ուզում ենք մարդավարի կեանք ունենալ»։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Փառք տուէք ուրեմն Աստուծուն, որ մինչև այսօր բերանիցս վատ խօսք չէք լսել և որ ես չարչարող և ծեծող վարպետներից չեմ եղել։

ԱՐՄԵՆԱԿ.—Բայց ծեծում են միմիայն անասունին, իսկ մարդը անասուն չէ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ուրեմն՝ ձեր ասելով էլ այսուհետև աշակերտին ձեռք տալ չի՞ կարելի։

ԱՐՄԵՆԱԿ.—Ի հարկէ ոչ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Քեզ ո՞վ է սովորեցրել այդ բաները։

ԱՐՄԵՆԱԿ.—Ո՞վ պէտք է սովորեցնի...մենք կարդացել ենք։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Սուտ էք ասում, անպիտաններ, սա Արամի խօսքերն է։

ԱՐՄԵՆԱԿ.—Ի զուր էք նրան մեղադրում... հօ ամբողջ Եւրոպան Արամի ձեռքին չէ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ջայնե՛րդ, անպիտաններ։ «Եւրոպա»։ Հը՛մ, դուք մոռանում էք, որ ես կը հեռացնեմ ձեզ ամենքիդ էլ։

ԱՐՄԵՆԱԿ.—Ինչպէս կամենաք։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ինչպէս կամենամ։ Դուք կարծում էք՝ ես կատակ եմ անում։ Ես ձեզ ասում եմ՝ կը հեռացնեմ ամենքիդ և ձեր տեղ նորերին կը վարձեմ։

ԱՐՄԵՆԱԿ.—Ոչ ոք չի գայ ձեզ մօտ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ինչպէ՞ս։

ԱՐՄԵՆԱԿ.—Այնպէս... սա վճռուած բան է, ոչ ոք չի համարձակուի։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Իսկ եթէ ես նրանց ասեմ, որ ես քաղաքի մէջ ամենաառաջին կօշկակարներից մէկն եմ, և ցոյց տամ նրանց անհաղին գո՞րծ։

ԱՐՄԵՆԱԿ.—Դուք ոչ մի գործ չէք ունենայ։ Մենք ձեր դէմ բօյկօտ կը յայտարարենք. այդ մասին կիմանայ ամբողջ քաղաքը, և ոչ ոք ձեզ մօտ պատուէր տալու չի գայ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ուրեմն ամբողջ քաղաքն էլ ձեր ձեռքի՞ն է։

ԱՐՄԵՆԱԿ.—Այդպէս են ասում։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Շատ լաւ, տեսնենք։ Ինձ տուող Աստուածը առանց ձեզ էլ կը տայ։

ԱՐՄԵՆԱԿ.—Ապա ինչո՞ւ երբ գարնան սկզբին գործազուլ արինք՝ չտուաւ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ջա՛յն աՐոմվկ։դ,

## ՏԵՍԻԼ 3.

**Յարութիւն, Արմենակ, Մարգար եւ այլն**

ՄԱՐԳԱՐ.—(Եկան խանութից)։ Խնամիդ եկել է և ուզում է քեզ հետ հաշտուել։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Քեզ ո՞վ ասաց, որ ես խնամի ունեմ։

ՄԱՐԳԱՐ.—Ինքն է ասում, Սահակ քեռին։ (Քիչ խմած է)։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Գլուխը քարով է տալիս։

ՄԱՐԳԱՐ.—Ասենք՝ այսօր թէև իմ գլխումս էլ մի առանձին խելք չի մնացել, բայց նա բոլորովին է իրան կորցրել…

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Աւելի լաւ է՝ խօսիս քո մասին։ Որտե՞ղ էիր ամբողջ օրը։

ՄԱՐԳԱՐ.—Փորս էր ցաւում։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Սուտ ես ասում, Մարգար, մէկ մտածիր՝ ինչ օրինակ պէտք է լինես այդ երեխաների համար։

ՄԱՐԳԱՐ.—Ի՞նչ երեխաներ են։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Այո, ինչ էլ որ լինի, նրանք երեխաներ են. և վայ նրան, ով մոլորեցնում է նրանց։

ԱՐՄԵՆԱԿ.—Իսկի էլ մենք երեխաներ չենք։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ինչպէ՞ս. ուրեմն դուք ձեզ արդէն մեծ էք համարում։

ՄԱՐԳԱՐ.—Դու նրանց հոգսը մի՛ քաշիր, վարպետ։ Սրանք մեզ նման չեն։ Տեսնում ե՞ս, փորձիր մէկին խփել և կը տեսնես, որ ամենքն էլ տրտինգ տուին։ Զգո՛յշ։ Պատահած տեղը քացի էլ կը խփեն։ Տեսնում ե՞ս սրան։ (Արմենակին)։ Լեզուով մեզ նման քսանին ջուրը կը տանի և ծարաւ յետ կը բերի։ Կատակ բան չիմանաս «ցացիալ դամկրատներ» են սրանք։ «Մէկը ամենքի և ամենքը մէկի համար»։ Է՜յ, աւազակներ. տես ունքերի տակից ինչպէս են նայում վրաս։ Ո՜ւհ, խողի ճուտեր։ (Նրանք ծիծաղում են)։ Փո՛ւստ, անպիտաններ, ինչպէ՞ս էք համարձակվում (իրան) ձեր մեծի վրայ ծիծաղել։ Ասենք թէ ինչ եմ խօսում։ Սրանցում ոչ մեծ կայ, ոչ փոքր. սրանք ամենքն էլ «ընկերներ» են… հը՛մ, ինձ էլ են «ընկեր» կոչում։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Աւելի լաւ կանէիր այս դրութեան մէջ տուն գնայիր և պառկէիր, քան թէ թշերդ կարմրացրել ես այստեղ եկել։

ՄԱՐԳԱՐ.—Ինձ փող է հարկաւոր։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ա՜, փողի ես եկել. համեցէք, վաղուց եմ պատրաստել։ (Տալիս է տաս րուբլանոց)։ Երևելի մարդ ես։

Շաբաթի վեց օրը գործում ես, իսկ յետոյ վազում թուղթ խաղալու, արբելու։

ՄԱՐԳԱՐ.—Ես արբած չեմ։ Ես կատարել եմ իմ քրիստոնէական պարտքս։ Ես գերեզմանատնից եմ գալիս։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ինչու՞ համար էիր գնացել։

ՄԱՐԳԱՐ.—Գնացել էի տեսնելու այն, ինչ որ այս կեանքում երբէք չենք տեսնելու։ Է՛յ, ընկերներ, լակոտներ, որ երբեմն քաղցր երազներով ինձ էլ էք խենթացնում, բոլորը սուտ է։ Ձեր ուզածը այնտեղ է։ Այնտեղ է հաւասարութիւն, եղբայրութիւն և յաւիտենական խաղաղութիւն։ Է՛հ, վարպետ, մի՛ նեղանայ։ Կեանքը այստեղ այնքան տխուր է, այնքան միատեսակ, որ երբեմն սիրտս ուզում է տրաքուի։ Ամենայն օր միևնոյն կաշու անուշահոտութիւնը, միշտ միևնոյն սև ներկը, միշտ այդ հոտած խոզի մազը, այդ ապակու կտորները, սրանրա ոտքի տակ փռուելը։ Ի՞նչ թագցնեմ, վարպետ. առաւօտեանից սիրտս լքցուած, ականջս սրել, մեռելի զանգի էի սպասում, որ մէկ դուրս գամ այս քաղաքի աղմուկից, մէկ գերեզմանատուն գնամ։ Եւ ի՞նչ։ Հէնց որ մի բաժակ խմեցի, հէնց որ փորս մի քիչ տաքացաւ, պատիւս վկայ, սուտ-սուտ «Աստուած ողորմին» այնպէս սկսեցի բղաւել, որ կարծես մեռելաթաղ չէր այդ, այլ մի հարսանիք։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Բաւական է, էլ գլուխ չունեմ քո դատարկախօսութիւնը լսելու։

ՄԱՐԳԱՐ.—Ահա հէնց այդ խիստ բնութիւնդ է, որ ամենքին ոտքի է կանգնեցրել էլ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Վատ եմ, չէ՞ք հաւանում։

ՄԱՐԳԱՐ.—Ապա ի՞նչ է։ Մօտդ ոչ խօսել կարելի է, ոչ ծխել և ոչ էլ երգել։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ապա դուք ի՞նչ էիք ուզում. որ դուք ինձ մօտ մինչև անգամ երգէիք, խօսէիք, և ծխէի՞ք էլ։ Ոչ, ես հին կարգը փոխողը չեմ։ Համեցէք. չէք հաւանում՝ դուրս այստեղից։

ՄԱՐԳԱՐ.—Է՛հ, դու էլ մօրդ վախեցրիր. կարծես էլ ուրիշ տեղ չկայ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Գնա, տեսնեմ ո՞վ է քեզ նման արբեցող բանուորին տեղ տալու։

ՄԱՐԳԱՐ.—Ես միայն այսօր եմ արբել, իսկ քո որդին ամեն օր։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Դո՛ւրս այստեղից ասում եմ, դո՛ւրս ամենքդ էլ։

ՄԱՐԳԱՐ.—Ուրեմն կապի՛ր արհեստանոցիդ դռները։ (Գնաց խանութով)։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Այո՛, աւելի շուտ կը կապեմ, քաղցած կը մնամ, բայց ձեզպէսների օգնութեամբ գործ շարունակել, մի կտոր հաց աշխատել՝ էլ չեմ ուզում։ Դէ՛, աղօթեցէք և գնացէք։ Աղօթեցէք, գուցէ Աստուած ձեզ մի փոքր խիղճ տայ և ամօթ։ Աղօթեցէք։ Թէ՞ Աստուծուն էլ էք ուզում ուրանալ։ Ձեզնից ամեն բան կարելի է սպասել։ Գնացէք, որդիք։ Սա կը լինի վերջին երեկոն։ Այո, վերջին երեկոն։ Կը պոկեմ դռների վրայից մակագիրները և կը գցեմ ներս։ Գնացէք, ես ձեր առաջը չեմ կտրել։ Մի չնչին շնորհակալութիւն էլ մի՛ ասէք, ոչ, հարկաւոր չէ։ Մի ամաչէք, սիրելիներ։ Ահա ես երեսս շրջում եմ մի կողմ և չեմ ուզում ձեզ ամաչեցնել։ Դէ գնացէք, Աստուած ձեզ հետ։ (Շրջեց երեսը մի կողմ)։

ԱՐՄԵՆԱԿ.—Ահա մեր պայմանները։ (Դրեց սեղանի վրայ)։ Մենք յայտարարում ենք գործադուլ։ (Գնաց խանութի դռնով. աշակերտներն էլ գոգնոցները հանելով տարան հետները)։

### ՏԵՍԻԼ 4.

**Յարութիւն եւ Սահակ**

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—«Տուր ինձ ոյժ, որ կարողանամ դիմանալ»։

ՍԱՀԱԿ.—(Եկաւ խանութով մի կապոց ձեռին)։ Է՛յ, քիչ աղօթիր. ես էլ շատ աղօթեցի, ես էլ շատ երեսս գետնին քսեցի, բայց միեւնոյնն է, չի օգնում։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ո՞վ է հարցնում քեզ՝ օգնո՞ւմ է թէ՞ ոչ։

ՍԱՀԱԿ.—Ա՜, տեսնո՞ւմ ես. եթէ օգնում է, ապա ո՞ւր է քո համբերութիւնդ։ Ինչո՞ւ ես մեղանչում, չէ՞ որ նոր աղօթեցիր։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Որտեղի՞ց ես ձեռք բերել այդ համարձակութիւնը... մի ժամանակ աչքդ գետնից չէիր բարձրացնում։

ՍԱՀԱԿ.—Իսկ քեզ դո՞ւր էր գալիս, որ ես միշտ խոնարհւում էի ամենքիդ առաջ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ի՞նչ գործ ունես դու այստեղ։

ՍԱՀԱԿ.—Եկել եմ իմանամ՝ մի՞թէ մինչև հիմա էլ չի թեթեւացել սրտիդ ցաւը։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Եթէ դրա համար ես նեղութիւն քաշել, ապա աւելորդ է. որովհետև ես իմ ցաւի ճարը կը գտնեմ. յոյս Աստուած, որ կը գտնեմ։

ՍԱՀԱԿ.—Ոչ, չես գտնի։ Ոչ դու, ոչ էլ ես։ Երբէք մենք մեր ցաւի ճարը չենք գտնի։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Դէհ, ուրեմն յոյս ունեմ՝ հասկանում ես, որ եթէ եկած չլինէիր ինձ մօտ այս ժամին՝ ինչ լեզուով պիտի խօսէի քեզ հետ։

ՍԱՀԱԿ.—Չլինի՞ թէ ուզում ես ինձ փախցնել։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ա՜խ, տէր Աստուած. և ինչ զարմանալի բան կը լինէր։ Չէ, Աստուած վկայ, երևելի վարպետ մարդիկ էք։ Եթէ ճշմարիտ է, որ դու մոռացել ես քո պատուելի կնոջ և աղջկայ արարմունքը, ապա ես քեզ կը յիշեցնեմ։

ՍԱՀԱԿ.—Հարկաւոր չէ, եղբայր։ Մի նորոգի ցաւերս։ Բայց չէ՞ որ դու այն օրը եկար և հազար ու մէկ պակասութիւն ասացիր երեսիս։ Ի՞նչ իրաւունքով։ Մի՞թէ արդար բան է, անարգել մէկին, իսկ նրան իրաւունք չտալ, որ մէկ-երկու խօսք էլ նա ասի։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ինչի՞ մասին պիտի խօսես։

ՍԱՀԱԿ.—Նրա մասին, որ իմ աղջիկը երբէք վատ չի եղել։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ա՜խ, ի հարկէ չէ, ես տեսայ նրա շնորհքը... Հը՛մ, լաւացմ՛ւ նրա ատամը։

ՍԱՀԱԿ.—Երբէք նա ատամնացաւ չի ունեցել։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Եւ ոչ էլ ի հարկէ կոկորդն է ցաւել։

ՍԱՀԱԿ.—Կեանքում հիւանդացած չկայ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Զարմանալի է ուրեմն, որ այսքան ուշանում է Աստուծոյ արդարադատութիւնը։

ՍԱՀԱԿ.—Ի՞նչ արդարադատութեան մասին է խօսքդ։ Ահա տես, ես ծնողս առնում եմ 3 բուռ հող (անում է) և իմ ձեռքով ցանում նրա վրայ և թաղում։ Սրանից աւել ինչ ես ուզում ինձանից։ (Լացակնում է)։ Խօսում ես արդարադատութեան մասին, բայց ո՞ւր է նա. և եթէ նա կայ, ինչո՞ւ է թագաւորում անօրէնութիւնը։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ցնորուե՞լ ես դու։

ՍԱՀԱԿ.—Այո, այդ մասին ես այնքան եմ մտածել, որ վերջը ցնորուել եմ։ (Յած)։ Ճշմարիտ ասում եմ քեզ. եթէ իմ տան մէջ չլինէր սարսափելի կարիքը, չէր լինի և այս բանը. բայց որպէսզի ա յ դ բ ա ն ը չլինէր, ես կաշուիցս էի դուրս գալիս. բայց ի՞նչ անես, եղբայր, չեղաւ, չեղաւ, չեղաւ։ Եւ հիմա էլ ահա պակասը լրացաւ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ի՞նչ կապոց է այդ։

ՍԱՀԱԿ.—Հաւատարիմ ծառայութեանս օժիտը։ Թքեցին

սպիտակած մազերիս, խփեցին ծոծրակիս և ասացին. «Պառաւած շուն, ո՞ւմ աչքերն ես ուզում կապել... ձևանալով որ ոչինչ չգիտես... Դո՛ւրս այստեղից. գնա ընտանիքիդ համար ցածութիւն արա»: Դէ, գնա հիմա դու արդարադատութիւնից խօսիր: Բայց ինչ էլ որ լինի, մեղքը միշտ մեղք է, և արդարացումն չկայ:

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ուրեմն եթէ դու պատիւ հասկացող մարդ ես, գնա պատժիր նրանց: Ասում են՝ նրանք նոր բնակարան են վարձել:

ՍԱՀԱԿ.—Այո: Ես ուզում էի փախչել այս քաղաքից, բայց ոչ. հեռու ինձնից թուլութիւնը. էլ բաժակը լցուել է, պէտք է հաշիւ պահանջեմ նրանցից: Ես ցոյց կը տամ նրանց, թէ ինչ է նշանակում առանց իմ հրամանի նոր բնակարան վարձելը: Ես կը բռնեմ նրանց երկուսի մազերից էլ, քաշ կը տամ նրանց յատակի վրայ և ոտքով այնքան կը կոխկռտեմ, որ շան նման սատակեն:

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Դու ասում էիր՝ աղջիկդ անմե՞ղ է:

ՍԱՀԱԿ.—Այո՛, նա անմեղ է. մեղաւորը հին կախարդն է. ահա թէ ո՛ւմ պէտք է բռնել. ահա թէ ինչպէս պիտք է սեղմել նրա մէջքը պատին և ոտքով այնքան խփել փորին՝ մինչև որ աչքերը դուրս գան և փորոտիքը թափուեն: Կամ թէ կը քցեմ նրանց մի սենեակ, կը կողպեմ դռները և կը ստիպեմ նրանց քաղցած մնալ. իսկ եթէ նրանք աղմուկ բարձրացրին, հաց աղաղակեցին, սարսափելի բան կանեմ. կրակ կը տամ, կայրեմ ամբողջ տունը և ինձ էլ հետը:

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Լաւ, լաւ. գնա այստեղից, ես գործ ունեմ:

ՍԱՀԱԿ.—(Գնալով): Մի քայլ անգամ չես կարող անել փողոցում. մէկ էլ տեսնես՝ կանգնեցրին, մատով ցոյց տուին ինձ և սկսեցին ծիծաղել: Մի՞թէ ընկած մարդուն պէտք է ծաղրել. Տէր Աստուած, ո՞վ է մտել և քրքրել (սիրտը ցոյց տալով) այստեղս, որ իմանայ, թէ ինչե՞ր եմ տարել: Հեշտ է ծաղրելը և անարգելը. ապա մէկ փորձեցէք տանելն էլ... Իսկ ես տարել եմ, եղբայր, տարե՛լ եմ (լալով)...

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—(Տանելով նրան): Տեսնում եմ, եղբայր, տեսնում եմ... (Վերցնում է պայմանները: Գնացին խանութի ներսը):

**ԵՍԼ. 5ցվ**

**Արամ եւ Օվանէս**

*ՕՎԱՆԷՍ.*—(Մտա՛ւ աջ կողմի դռնից եւ դէպի ներս մօրը)։ *Օ՛խ, ես քեզ ասում եմ, մի՛ լաց լինի... Ես չեմ կարողանում տանել արտասուքներդ։ Արտասուք թափելով աշխարհին չես յաղթի։ Բաւական է։*

*ԱՐԱՄ.*—(Պիջակը ուսերին, կապոյտ բլուզով, մի բրօշիւր կարդալով, լայնեզր սեւ գլխարկով, երկար կօշիկներով մտա՛ւ ձախից եւ լսեց վերջին խօսքերը)։ *Կեցցէ Օվանէս, լաւ ես ասում, աշխարհի հայրը արտասուքով չեն անիծի։*

*ՕՎԱՆԷՍ.—Է՜հ, Արամ, մի՞թէ ես հասկանում եմ, թէ ի՛նչ եմ խօսում։*

*ԱՐԱՄ.—Այդպէ՞ս։ Իսկ ես կարծում էի, որ դու լաւ մտածել ես, յետոյ ես ասում։*

*ՕՎԱՆԷՍ.—Ի՞նչ մտածել։*

*ԱՐԱՄ.—Այսինքն՝ հեռու լալկանութիւնը, գլխիկոր ընկճուելը, մի խօսքով՝ ստրուկին յատուկ խոնարհութիւնը։ Պէտք է այն, ինչ որ վաղուց է պակասում քեզ, մի փոքր կամքի ոյժ, մի փոքր էլ համարձակութիւն, որ կարողանաս թափ տալ վրայիցդ այդ կօշմարը։ Իսկ յետոյ, Օվանէս, որ գլխաւորն է, հաստատուն հաւատ։ Չէ՞ որ ախր այդպէս չի կարելի, սիրելիս։*

*ՕՎԱՆԷՍ.—Էլ ի՞նչ հաւատի մասին է խօսքդ։*

*ԱՐԱՄ.—Մոռացե՞լ ես, Օվանէս։ Հաւատա՛, որ մենք պէտք է յաղթենք, մեր ջանքերը այսքան զոհաբերութիւններից յետոյ՝ պէտք է պսակուի աջողութեամբ։*

*ՕՎԱՆԷՍ.—Երանի քեզ, որ այդ բաներով ես ոգեւորվում։*

*ԱՐԱՄ.—Ա՛խ, պէտք է զարթնել, Օվանէս, բաւական է ինչքան քուն եղանք։*

*ՕՎԱՆԷՍ.—Քեզ համար, ի հարկէ, հեշտ է այդպիսի բաների մասին խօսելը և մտածելը, բայց արի մէկ իմ սրտին էլ հարցրո՛ւ, տես նա ի՛նչ է ասում։*

*ԱՐԱՄ.—Է՜հ, եղբայր, մի՞թէ դու դեռ մոռացութեան չես տուել... բաւական է, ի սէր Աստուծոյ, մէկ հեռու քշիր քեզանից այդ փոքրոգութիւնը։ Դու հօ երեխայ չես, սիրելիս։*

*ՕՎԱՆԷՍ.—Իմ դրութեան մէջ երբէք գլուխդ ուրիշ մըտքեր չէին մտնի։*

*ԱՐԱՄ.—Այդպէ՞ս ես ճանաչել ինձ։*

ՕՎԱՆԷՍ.—Թոյլ է ուրեմն քո սէրը, և սուտ է՝ որ դու սիրահարուած ես։

ԱՐԱՄ.—Գուցէ.... բայց և այնպէս՝ ես կասեմ, որ, հաւատացնում եմ, ինքս երբէք Թոյլ չէի տայ, որպէսզի մարդ իր ամբողջ էութիւնը գերի դարձնի ինչ-որ հիւանդոտ զգացմունքների։

ՕՎԱՆԷՍ.—Ահա նոյնն են ասում և նրանք։ Ես ամեն օր միևնոյնն եմ լսում, բայց չեմ կարողանում։ Սիրտս նման է լցուած ռումբի. նա ամեն մի րօպէ պատրաստ է մի փոքրիկ շարժումից պայթել։ Ես հազիւ եմ կարողանում զսպել ինձ։ Կատաղած գայլի նման՝ ես պատրաստ եմ առաջին պատահողի վրայ յարձակուել... երևի շուտով ես մարդ կը սպանեմ, կամ ււելի շուտով ես կը սպանեմ ինքս ինձ։

ԱՐԱՄ.—Ինչու չէ... Լսիր։ Երբ առաջին անգամ ես տեսայ ֆօնօգրաֆը՝ ասացի. կեանքս կը տայի Էդիսսօնին, եթէ այդ հնարաւոր լինէր. սա ես հասկանում եմ։ Ինչ վերաբերում է քո միւս մտքին, ես կասեմ՝ թող այդ բանը։ Ի՞նչ օգուտ այդ անմիտ սպանութիւններից. քաղցածը քաղցածի արիւնն է թափում, ստրուկը ստրուկի ոսկորը կրծում։ Եւ այդ բոլորը ինչու, եթէ ոչ մի կտոր չոր հացի համար։ Քաջ ես, տղամարդ ես. համեցէք, կռուի ուրիշ ասպարէզ կայ։ Այնտեղ, եղբայր, քո անձնական վիշտն էլ կը մոռանաս։ Մինթէ դու աչքերդ կապած ես ման գալիս և մինթէ չգիտես, թէ շուրջդ ինչեր են կատարվում։ (Խորհրդաւոր)։ Բանը մարմնացել է, և փոթորիկ դարձած համակել է ամբողջ աշխարհը. իսկ դու մի անմեղ արիւն թափելու համար ես մտածում։

ՕՎԱՆԷՍ.—Անմե՞ղ ես կոչում նրան. ուրեմն չունե՞մ իրաւունք պատժելու նրան։

ԱՐԱՄ.—Երբէք։

ՕՎԱՆԷՍ.—Ինչու համար։

ԱՐԱՄ.—Որովհետև դու նրան չէիր կարող պահել, ինչպէս նա կուզէր։ Ահա գաղտնիքը։

ՕՎԱՆԷՍ.—Ապա մեր այս ուժեղ ձեռքե՞րը։

ԱՐԱՄ.—Բայց ինչպէս է գնահատվում մեր «այդ ուժեղ» ձեռքերի գործը։ Սրա համար էլ ասում եմ քեզ, Օվանէս, հազարաւոր մեզպէսների հարցը վճռուած կը լինի այն ժամանակ, երբ մենք յաղթող կը հանդիսանանք։ Մէկ աչքդ բաց և տես ինչեր են կատարվում։ Ահա առ, կարդա։ (Գրպանից հանում է ծածուկ մի թուղթ)։ Հիմա ամենքը ոտքի են կանգնել և իրաւունք են պահանջում։ Ի՞նչ զանազանութիւն կայ քեզ նման մի

գործակատարի և ինձ նման մի գործարանական բանուորի մէջ։ Ինչո՞ւ մենք էլ ձեռք ձեռքի չտանք, ինչո՞ւ մենք էլ չմիանանք, կռուի դաշտ դուրս գանք և պաշտպանենք մեր դատը։

### ՏԵՍԻԼ 6.

**Արամ, Օվանէս, Յարութիւն**

ԱՐԱՄ.—Տէրունին գալիս է, Օվանէս. դու գիտես, որ նա ինձ հետ չունի... Ես գնում եմ։ (Խորհրդաւոր)։ Վաղը սկսվում է։ (Ուզում է գնալ)։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Է՜յ, սպասի՛ր։ (Գալիս է խանութից)։ Կարդա տեսնեմ այստեղ ի՞նչ է գրուած։ «Փայմաններ 16 կէտից բաղկացած»։ Հը՛մ, արդեօք չափազանց չե՞ն այդ լակոտների պահանջները։

ԱՐԱՄ.—Ե՞ս ինչ կարդամ, հօրեղբայր։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Սրիկայ։ Բաւական չէ (թղթին խփելով), այն անպիտաններին խելքից հանել ես, հիմա էլ սրա՞ն ես ուզում գժուացնել։

ԱՐԱՄ.—Հօրեղբայր, մի անգամ էլ կրկնում եմ, որ սա տնտեսական անհաղթին խնդիր է։ Դու բոլորովին ի զուր ես ինձ վրայ բարկանում։ Մեքենաների շնորհիւ, այո, քեզ նմանների մանր մունր այս ողորմելի արհեստանոցները կը կործանուեն, բայց այդ կործանուածների փշրանքներից կը կանգնեն հսկայական մեծութեան գործարաններ, և այդ աշխատանքի տաճարների մէջ մենք այլևս չենք տառապի այնպէս, ինչպէս քեզ նմանները իրանց բոլոր կեանքում։ Այնտեղ կը վերանայ վաղուայ քաղցած մնալու հոգսը։ Այնտեղ կը լինի տնտեսապէս ապահովուած ցանկալի եղբայրութիւնը։ Իմ սիրտը քեզ համար ցաւում է, բայց ի՞նչ անել, հնար չկայ։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ուրեմն իմ արհեստանոցը պէտք է կործանուի՞։ Եւ դու կասես, որ մտածո՞ւմ ես ինձ համար։

ԱՐԱՄ.—Ես մտածում եմ որդիների ապագայի և նրանց բախտաւորութեան մասին. իսկ հայրերը, եթէ նրանք խելք ունենան, պէտք է շնորհակալ լինեն մեզանից։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ես քեզ ցոյց կը տամ, թէ ինչպէս է լինում շնորհակալութիւնը։ (Ուզում է յարձակուել)։

ՕՎԱՆԷՍ.—(Բռնում է նրան)։ Սպասի՛ր, ի՞նչ ես խանգարում նրան։

ԱՐԱՄ.—Վաղը առաւօտեան ժամը 10-ին, քաղաքի 4 կէտերից. պատրաստ եղիր, Օվանէս։ (Գնաց ձախ)։

ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Սպասի՛ր, շան ծնունդ։

### ՏԵՍԻԼ 7

**Օվանէս եւ Յարութիւն**

*ՕՎԱՆԷՍ.—Ի՞նչ ես ձայնդ գլուխդ գցում։*

*ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Դու չե՞ս լսում՝ նա ինչե՞ր է խօսում։*

*ՕՎԱՆԷՍ.—Քեզ ի՞նչ. ի՞նչ էք ամեն քայլափոխում հետեւում մարդուն։*

*ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Ուրեմն դու հաւանութիւն ես տալիս նրա ասածին։*

*ՕՎԱՆԷՍ.—Այո, ես միանում եմ նրանց հետ և չեմ ուզում լսել քեզ։*

*ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Դու ինձ չես ուզում լսե՞լ։*

*ՕՎԱՆԷՍ.—Այո, չեմ ուզում ոչ լսել և ոչ էլ խօսել։* (Նըստում է գլխիկոր)։

*ՅԱՐՈՒԹԻՒՆ.—Եւ ոչ իսկ խօսե՞լ... Վնաս չունի, որդիս։ Մի բարկանայ։ Ես քեզ այլես գլխացաւանք չեմ տայ։ Քանի որ բանը այդպէս դառաւ, ահա։* (Պատռեց թուղթը եւ ցրեց)։ *Սրա հետ թող ոչնչանայ իմ գործս էլ... Սա կը լինի վերջին երեկոն... Կը հաւաքեմ եղած-չեղածս, վաղը կը տանեմ կիրակնօրեայ շուկայ և այնտեղ կը ծախծխեմ։ Յետոյ ամեն բան կուտենք կը վերջացնենք, յետոյ էլ կը բռնեմ քո մօր ձեռքից՝ դռնէ-դուռ կընկնեմ և.... ողորմութիւն կը հաւաքեմ... Ա՞յդ էիր ուզում...։ Սա կը լինի քեզ հետ իմ վերջին խօսքը։ Աստուած քեզ հետ։* (Աչքերը բռնած գնաց արհեստանոց)։

### ՏԵՍԻԼ 8

**Օվանէս եւ Գասպար**

*ԳԱՍՊԱՐ.—*(Եկաւ ձախ կողմից, մօտեցաւ Օվանէսին)։ *Բարի երեկոյ, Օվանէս։*

*ՕՎԱՆԷՍ.—*(Ուշքի գալով պռնգվում է եւ նորից զսպում իրան)։ *Գասպար, ինչո՞ւ ես եկել։*

*ԳԱՍՊԱՐ.—Հէնց այնպէս, սիրտս ուզեց քեզ, և եկայ։*

*ՕՎԱՆԷՍ.—Դու համարձակվում ես դեռ ծաղրե՞լ ինձ. դու չե՞ս իմանում՝ ինչ կարող է պատահել։*

*ԳԱՍՊԱՐ.—Կարող է պատահել, որ դանակը կը դնես այստեղիս* (փորին) *և կը խրես ներս։*

*ՕՎԱՆԷՍ.—Եւ դու կասես, որ սա կը լինի անարդարութիւն։*

ԳԱՍՊԱՐ.—Ոչ. սա կը լինի բարկութեան թափի մէջ սպանութիւն գործել և յետոյ իսկոյն...

ՕՎԱՆԷՍ.—Ի՞նչ։

ԳԱՍՊԱՐ.—Յետոյ իսկոյն զղջումն՝ անմեղ արիւն թափելուդ համար։ Լսի՛ր, Օվանէս։ Ի՞նչ հարկաւոր է տաքանալ։ Խօսենք հանգիստ սրտով, իսկ երբ կը գայ տաքանալու տեղը, ես ինքս քեզ կը յիշեցնեմ։

ՕՎԱՆԷՍ.—Ի՞նչ պիտի ասես. էլ ասելու տեղ թողե՞լ ես։

ԳԱՍՊԱՐ.—Լսի՛ր ինձ։ Ես չեմ երկարացնելու, որովհետև իմ սիրտն էլ է լցուած... գուցէ և քոնից ոչ պակաս։ Վերջին ժամանակներս դու ինձնից ի զուր ես երես դարձրել։ Թող ես լինեմ սրիկայի և անպիտանի մէկը, բայց խոստովանուի՛ր՝ վատ ընկեր չեմ եղել։

ՕՎԱՆԷՍ.—Ի՜նչ խօսք... տեղը եկաւ, և ես տեսայ քո ազնուութիւնը և հիացայ։

ԳԱՍՊԱՐ.—Ոչ, դու իմ ազնուութիւնը չտեսար, բայց տեսնում եմ՝ ժամանակ է, որ իմանաս, թէ ինչե՛ր է կատարուել այստեղ։ (Սրտում)։

ՕՎԱՆԷՍ.—Ինչե՞ր։

ԳԱՍՊԱՐ.—(Սաստիկ զգացուած)։ Պահապան հրեշտակի նման միշտ կանգնած եմ եղել Ն ր ա դռան։

ՕՎԱՆԷՍ.—Ո՞ւմ...

ԳԱՍՊԱՐ.—Ն ր ա, Շուշանիկի։ Յիշում ե՞ս իմ խօսքերը, երբ ես առողջացայ, կամ երբ դու ինձ ոտքի կանգնեցրիր։

ՕՎԱՆԷՍ.—Սովորական խօսքեր... Դու ասացիր՝ «Ես ոչինչ չունեմ, քո ազատած կեանքը քեզ է պատկանում, հրամայի՛ր ինչ կուզես, և ես պատրաստ եմ»։

ԳԱՍՊԱՐ.—Եւ ահա ես եկել եմ և ասում եմ՝ ես պատրաստ եմ։

ՕՎԱՆԷՍ.—Ես ոչինչ չեմ հասկանում։

ԳԱՍՊԱՐ.—Յիշում ե՞ս, Օվանէս, ինչպէս էր ձեռներս քոր գալիս, երբ մի ընտանիքում տեսնում էինք բացարձակ անառակութիւն։ Ա՜հ, ես սրանց հերն եմ անիծել։

ՕՎԱՆԷՍ.—Մի՞թէ դու կամենում ես ասել, որ այդ այդպէս է։

ԳԱՍՊԱՐ.—Ապա էլ ի՞նչ։

ՕՎԱՆԷՍ.—Ուրեմն Նրա մօր խօսքը, թէ դու ես ասել։

ԳԱՍՊԱՐ.—Կար ժամանակ, որ այդպէս չէր համարձակուի այդ ցած արարածը։

ՕՎԱՆԷՍ.—Դու էլ ես աչքիս լաւ երեւալու համար յիշոց տալիս նրան։

ԳԱՍՊԱՐ.—Ոչ, այդպէս բան չկայ։ (Պաուզա)։ Քեզնից առաջ գեղեցիկ Շուշանիկին ես եմ սիրել։

ՕՎԱՆԷՍ.—Ինչո՞ւ ինձ չէիր նախազգուշացնում։

ԳԱՍՊԱՐ.—Չգիտեմ։ Երբ մէջտեղ ընկաւ քո անունը, ես լռեցի։

ՕՎԱՆԷՍ.—Յետո՞յ։

ԳԱՍՊԱՐ.—Ես ուրախացայ անկեղծ սրտով և կարծեցի, թէ կատարուեց հատուցումը իմ երախտագիտութեան։ Ես անհամբեր սպասում էի այն օրին, երբ պիտի տեսնէի քո երջանկութիւնը։ Կեանքումս ոչ տանը և ոչ դրսում ինձ համար ցաւող սիրտ չեմ տեսել... միմիայն դու... Ես կարծում էի մի անգամից ձեռք եմ բերել մի եղբայր... և, այո, և մի քոյր... Թև չունէի թռչելու համար։ Ես ամեն օր շտապեցնում էի մօրը, որ շուտ տեսնեմ քո ուրախութիւնը։

ՕՎԱՆԷՍ.—Ինչի՞ համար։

ԳԱՍՊԱՐ.—Վախենում էի՝ չլինի թէ որսդ փախցնեն, որովհետև վտանգաւոր որսորդներով էր շրջապատուած թռչունդ։

ՕՎԱՆԷՍ.—Յետո՞յ։

ԳԱՍՊԱՐ.—Մի անգամ... ո՛չ... հէնց նոյն գիշերը ես բռնեցի...

ՕՎԱՆԷՍ.—Բռնեցի՞ր, ասում ես։

ԳԱՍՊԱՐ.—Այո, ինչպէս գողին, գողութեան տեղում, գողացածը ձեռքին։

ՕՎԱՆԷՍ.—Ես չեմ կարող հաւատալ։

ԳԱՍՊԱՐ.—Հրամայում ես ուրեմն, որ պատռեմ սիրտս։ (Երկու ձեռքով բռնում է կուրծքը)։

ՕՎԱՆԷՍ.—Ինչպէ՞ս տեսար։

ԳԱՍՊԱՐ.—Մի սենեակում։

ՕՎԱՆԷՍ.—Նրա՞ն՝ ասում ես։

ԳԱՍՊԱՐ.—Ապա էլ ո՞ւմ։

ՕՎԱՆԷՍ.—Իսկ որտե՞ղ էր մայրը։

ԳԱՍՊԱՐ.—Դժոխքի յատակում, ես ինչ գիտեմ. նա յետոյ եկաւ։

ՕՎԱՆԷՍ.—Եւ ի՞նչ։

ԳԱՍՊԱՐ.—Արիւնը տուաւ գլխիս, և ես հնարեցի այն, ինչ որ մայրը քեզ ասաց։

ՕՎԱՆԷՍ.—Բաւական է... ես այլևս ոչինչ չեմ ուզում լսել։

ԳԱՍՊԱՐ.—Ճշմարի՜տ։ Իսկ ես եկել եմ՝ քեզ նրանց մօտ հիւր տանելու։ Ես արդէն պատրաստել եմ նրանց։

ՕՎԱՆԷՍ.—Որ գամ և ամէն ինչ տեսնեմ իմ աչքո՞վ։ Ո՛չ։ Այդ սարսափելի է. ես այդ չեմ կարող։

ԳԱՍՊԱՐ.—Հասկացիր միտքս։ Նրանք քեզնից վախենալով կարող են ոչնչացնել տալ քեզ… Նրանցից ամէն բան սպասելի է։

ՕՎԱՆԷՍ.—Ինչպէս կուզես… ես արդէն կործանուած եմ…

ԳԱՍՊԱՐ.—Կնիկ մի լինիր… հասկացի՛ր միտքս։

ՕՎԱՆԷՍ.—Էլ ի՞նչ միտք։ (Զարթնածի պէս)։

ԳԱՍՊԱՐ.—Եթէ ես իմանայի, որ դու կը համբուրէիր իմ ճակատը, ես ամէն բան իմ ձեռքով վաղուց արած վերջացրած կը լինէի։

ՕՎԱՆԷՍ.—Ինչո՞ւ չարիր։

ԳԱՍՊԱՐ.—Եթէ թոյլ ես տալիս, ուրեմն վճռուած է։

ՕՎԱՆԷՍ.—Ո՛չ, սպասիր։

ԳԱՍՊԱՐ.—Համեցէ՛ք։

ՕՎԱՆԷՍ.—Բայց ես չեմ կամենում անարդար լինել… ուրեմն նախ դատաստան և յետոյ վճիռ։

ԳԱՍՊԱՐ.—Շատ լաւ, դու կը լինես դատաւոր, իսկ ես վկայ։ Եւ եթէ դու ինձ չես հաւատում, համեցէք մնացած դատաստանն էլ արա իր տեղում։

ՕՎԱՆԷՍ.—Հիանալի է. այնտեղ, որտեղ կատարուել է ոճիրը։

ԳԱՍՊԱՐ.—Հիմա տեսնում եմ, որ դու տղամարդ ես։

ՕՎԱՆԷՍ.—Ոչ, դեռ մի ասի այդպէս… մի՛ շտապիր…։ Յետոյ… յետոյ…։

ԳԱՍՊԱՐ.—Շատ լաւ, թող լինի յետոյ։

ՕՎԱՆԷՍ.—Բայց չէ՞ որ նա մի անմեղ… անփորձ աղջիկ էր… Մի՞թէ արդարութիւն կը լինի թողնել մօրը և պատժել նրան։

ԳԱՍՊԱՐ.—Մայրը պէտք է ապրի․

ՕՎԱՆԷՍ.—Ապրի՛։

ԳԱՍՊԱՐ.—Այո, ապրի և տանջուի։

ՕՎԱՆԷՍ.—Այդ հիանալի ես ասում։ Իսկ այն պարո՞նը։

ԳԱՍՊԱՐ.—Նրանում մեղք չկայ, թէ չէ՝ Գասպարը վաղուց նրան մորթած կը լինէր՝ ինչպէս մի հաւի։

ՕՎԱՆԷՍ.—Այդ ճշմարիտ է։

ԳԱՍՊԱՐ.—Ուրեմն դու կը գա՞ս։

ՕՎԱՆԷՍ.—Կը գամ։

ԳԱՍՊԱՐ.—*Խանութիս դուռը կիսաբաց, ճրագս հանգցրած՝ քեզ կը սպասեմ։* (Գնաց որտեղով որ եկել էր)։

ՕՎԱՆԷՍ.—(Պառզա)։ *Նախ դատաստան, յետոյ վճիռ։* (Վերցնում է սեղանի վրայից մի դանակ)։ *Մի ճուտ սպանելու համար այդ էլ բաւական է։* (Օձիքը վեր քաշեց, վազեց փողոց)։

**ՎԱՐԱԳՈՅՐ**

ԱԼ. ԱԲԷԼԵԱՆ

*(Վերջը միւս անգամ)*

---

# ԱՇՈՒՆԸ

*Երբ մարդիկ լուռ պատրաստվում են հանդիպելու*
*Աշնան ցրտին, երբ հոգում են իրանց անվերջ*
*Կարիքները ունայն կեանքի՝ անխօս, հլու,*
*—Ո՛չ, այդ պահին դեռ աշուն չէ իմ սրտի մէջ։*

*Բայց ծառերի մահաշշուկ օրօրներով*
*Երբ պոկվում են տերևները մունջ ու գունատ՝*
*Դեռ ապրելու յուսով լեցուն, կեանքը լալով,*
*—Ես զգում եմ, որ աշուն է լուռ, յուսահատ։*

*Զարագուշակ սուլոցներով երբ խօլ քամին*
*Գորշ բնութեան արդէն անդարձ մահն է երգում,*
*Սև մահերգը, որ լռեցնում է ամենին,*
*—Օ՜հ, այդ պահին մռայլ աշուն է իմ հոգում։*

ԷՄ-ՕՍ

---

# ՕՍՄԱՆԵԱՆ ՀԱՅԵՐԻ
# ԱԶԳԱՅԻՆ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆԸ*)
# (1860—1910)

---

## ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

*Տեղեկագիր Հայաստանի ինքնավարութեան մասին.—Դիմումներ Բ. Դրան և եւրոպական տէրութիւններին. — Եկեղեցականների և աշխարհականների դերը Հայկական Խնդրում.—Հայոց քաղաքական հայեացքներն և տարբեր ուղղութիւնները. — Ռուսասէրներ, անգլիասէրներ և Թրքասէրներ.—Հայկաթոլիկները.—Ընդհանուր ազգային համերաշխ գործունէութիւնը.—Ներսէսի այցելութիւնը մեծ իշխանին Սան-Ստէֆանօյում.—Հայկական պատուիրակութիւն ուղարկելու որոշումը։*

Հայաստանի ինքնավարութեան մասին Ներսէս պատրիարքի և իր խորհրդակիցների կազմած սկզբնական ծրագիրը՝ Ներսէս, ինչպէս արդէն յիշեցինք (Գլ. Բ.), դեռ ևս Սան-Ստէֆանոյի դաշնադրութիւնից յառաջ ներկայացրել էր Ազգ. Վարչ. Խառն Ժողովին, առիթ առնելով զինուորագրութեան խնդիրը։ Նա բացատրել էր, թէ քանի որ Թրքահպատակ ուրիշ քրիստոնեայ ազգեր զանազան ցեղական և տեղական արտօնութիւններ են պահանջում, հայերը նրանցից նուազ իրաւունք չունեն նոյնանման պահանջի համար. այս հիման վրայ էլ ինք որոշել էր կառավարութիւնից խնդրել, որ Հայաստանին շնորհուի վարչական այնպիսի ձև, որպիսին գոյութիւն ունէր Լիբանանում։

Այս առաջարկութիւնն եռանդուն կուսակիցներ գտաւ Խառն Ժողովում, բայց մեծամասնութիւնն անյարմար համարեց, որ այն ժամանակի պարագաներում պաշտօնապէս այդօրինակ պահանջ դրուի կառավարութեան։ Այնուամենայնիւ

---

*) «Արօր» 1910 թ. № № 1, 2, 3, 4, 5, 6—7, 8—9—10, 12 և 1911 թ. № № 1, 2—3, 4, 5—6, 7—8 և 9.

քիչ յետոյ Ազգ. Վարչութեան հաւանութեամբ Ներսէս մի տեղեկագիր ներկայացրեց սադրազամին, որտեղ յիշելով Հայաստանի հարստահարուած վիճակն և հայերի վրայ գործ դրուած բռնութիւններն և քանիցս խոստացուած բարենորոգումների չգործադրուելը՝ Հայաստանի համար ինքնավարութիւն էր պահանջում։ Տեղեկագրի ներկայացրած պահանջներն էին. 1) Աշխատանքի ազատութիւնն և պաշտպանութիւնը, 2) Անձի ապահովութիւնը, 3) Ինչքի ապահովութիւնը, 4) Դպրոցների, վանքերի, եկեղեցիների և ազգ. կալուածների երաշխաւորումն և 5) որ ամենից դրականն էր, երկրի այժմեան ոստիկանական կազմակերպութեան փոխարէն՝ այնպիսի վարչական դրութիւն հաստատել, որ ներկայ հանգամանքներին համապատասխան լինէր*)։

Կառավարութիւնն և ոչ իսկ ժամանակ ունէր զբաղուելու այս թաքրիրով, և նա մնաց անհետեւանք։ Սան-Ստէֆանոյի դաշնագրութիւնից յետոյ, երբ վերջնականապէս հաստատուեց, թէ Անգլիայի պահանջմամբ եւրոպական կօնգրէս պիտի գումարուի յիշեալ դաշնագրութիւնը վերլուծելու, Ներսիսեան Խումբն իսկոյն գործի ձեռնարկեց մի ընդհանուր դիմում անելու մեծ տէրութիւններին։ Այս դիմումի նպատակն էր աշխատել, որ ոչ միայն 16-րդ յօդուածը չհանուի Սան-Ստէֆանոյի դաշնագրից, այլ աւելի մեծ ընդլայնում ստանայ ի նպաստ հայոց, այսինքն ինքնավարութիւն երաշխաւորուի Հայաստանին։ Խնդրագիր-յիշատակագիրը ստորագրողները միայն եպիսկոպոսներ էին։ Այն միջոցին հրապարակի վրայ երեւցողները միայն եկեղեցականներն էին, Ներսէս պատրիարք և եպիսկոպոսները, բայց իրօք գործը պատրաստողներն և նոյն իսկ ղեկավարողներն աշխարհականներ էին, թէև վարագոյրի ետև ծածկուած։ Գրիգոր Օտեան, Սէրվիչէն, Յովհ. Սագըզ**) և ուրիշներ, որոնց անուններն արդէն վերև համանման առթիւ յիշել ենք, այնպիսի խորհրդականներ էին Ներսէսի և եկեղեցականութեան, որ առանց նրանց հաւանութեան կամ գիտութեան ոչ մի վճռական քայլ չէր առնվում***)։

---

*) «Голосъ», 16 փետրուարի 1878. «Մեղու Հայաստանի», 1878, № 10.

**) Նշանաւոր հայ-կաթոլիկ գործիչ, որ վերջը մինիստրական պաշտօնի բարձրացաւ փաշայութեան տիտղոսով։

***) Ա. Զօպանեան «Անահիտի» մէջ հրատարակած է Ստեփան փաշա Ասլանեանի 1887-ին գրած երկու նամակները Ստեփ. Փափազեանին ուղղուած, որոնց մէջ մի քանի հետաքրքրական կէտեր կան 1878-ի գործունէութեան վերաբերեալ։ Ասլանեան գրում է. «Ազգային Խնդիր ըսելով

Այն ժամանակ մեծ փութով Հայաստանի վիճակագրութիւնն և քարտէսն էլ պատրաստուեց, մեծ պետութիւններին ներկայացուելու համար, որպէս զի պետութիւնները խնդիրը չդատեն միայն Թրքական աղբիւրների հիման վրայ, այլ փոքր ի շատէ ճիշտ գաղափար կազմեն հայաբնակ նահանգների աշխարհագրական դիրքի, ազգաբնակութեան թուի և բնակիչների ցեղական բաժանումների մասին։

Ազգի ապագայի և մանաւանդ քաղաքական ապագայի մօտալուտ բարեփոխման յոյսերն այնչափ ուժեղ և այնչափ տարածուած էին ժողովրդի բոլոր դասերի մէջ, որ Սան-Ստէֆանոյի դաշնագրից էլ յառաջ, երբ Հայկական Խնդիրն իբրև միջազգային քաղաքական հարց դեռ հրապարակի վրայ չէր, հայութիւնն սկսել էր ապրել քաղաքական կեանքով։ Կարծես թէ նա խոր քնից էր զարթել և նախ զարմացմունքով, յետոյ մեծ ակնկալութեամբ հետևում էր քաղաքական աշխարհի մէջ արագօրէն միմեանց յաջորդող դէպքերին։ Տիրում էր ընդհանուր ոգևորութիւն։ Քաղաքական կեանքն և հայրենասիրական եռանդը նոր հորիզոններ էին բանում ժողովրդի և մանաւանդ նրա ղեկավարների առջև։ Այս նոր կեանքի աստիճանաբար զարգացումը բնականաբար իր հետ բերում էր նաև քաղաքական հայեացքների տարբերութիւնն, որ սկսել էր նկատուել թէ ժողովրդի և թէ առանձնապէս նրան առաջնորդ հանդիսացողների մէջ։ Ուստի կարևոր է աւելի մօտից շօշափել այս հարցն և նրան յառաջացնող ժամանակակից քաղաքական պարագաները։

Թիւրքիան՝ ընկճուած և տապալուած՝ իր յաղթական թշնամու գթութեանն էր ապաւինել, որքան կարելի է քիչ կորուստով ազատուելու համար։ Ռուսաստանը շարունակում էր սեղմել իր հակառակորդի պարանոցը՝ —Դարդանէլից Բօսֆօր, որպէս զի որսը ձեռքից չթողնէ, մինչև իր անհուն զոհաբերութեան համապատասխան վարձատրութիւն չստանայ նրանից։ Եւ ահա

---

պարզապէս Հայկական Խնդիրը կը հասկնամ։ Այս խնդրոյն ծնունդ տրուեցաւ այն ժամանակ, որ հարկ էր, որ ծագէր, չէր կարելի չծագել, և ասոր ապացոյցն այն է, որ նոյն իսկ Տէրութիւնը մասնակցեցաւ ազգայնոց ջանից»։ Թէ ինչ տեսակ էր օսմանեան տէրութեան մասնակցութիւնը, մենք արդէն պատմել ենք (Գլ. Ա.)։ Ներսէս պատրիարքի գործունէութեան նկատմամբ էլ ասում է. «Մեր ազգային լէժանտը (legende) Ներսէսի անուան վրայ յերիւրեալ է. ձգելու է այնպէս, թէեւ կատարեալ իրաւացի չըլլայ», և շարունակում է՝ «ամէն մեծ գործ անունի մը կարօտ է. անուն մը տրուեր է, այն կը մնայ և պէտք է մնայ, թէեւ սխալ ըլլայ...»։ («Անահիտ», 1907, թիւ 6—7—8—9)։

երևան էր եկել մի այլ զօրեղ պետութիւն, որ պաշտպան էր հանդիսանում պարտուածին և նոյն իսկ զէնքի սպառնալիքով աշխատում էր գէթ մասամբ վերականգնել ընկածին։Այս հզօր պետութիւնն Անգլիան էր։ Եւ այսպէս՝ 3 տէրութիւն հսկայական ջանքեր էին գործ դնում, որ Թիւրքիայի ժողովրդի ապագան, նրա այլացեղ հպատակների վարչական ներքին կեանքն և առհասարակ Թրքական քրիստոնէաբնակ գաւառների քաղաքական կացութիւնն այն ձևն ստանայ, ինչ որ տէրութիւններից իւրաքանչիւրն իր անհատական շահերին համապատասխան էր համարում։ Հայ ժողովուրդը բնականաբար անտարբեր չէր կարող մնալ տէրութիւնների այս մրցման մէջ։ Իրանց ներքին համոզմունքով, իրանց ցեղական մասնաւոր շահերի և նոյն իսկ իրանց գոյութեան պահպանման տեսակէտից հայերը հարկադրուած էին եթէ ոչ բոլորովին յարել, գոնէ համակրել յիշեալ տէրութիւններից մէկին կամ միւսին և ըստ կարելոյն ոյժ տալ նրա ջանքերի իրականացման։ Ո՛ր պետութեան մերձաւոր կամ հեռաւոր նպատակը հայ ազգի ապագայ բարօրութեան համար աւելի շատ երաշխաւորութիւն էր ընծայում, ազգն և իր ղեկավարներն էլ բնականաբար նրան պիտի համակրէին և նրան դիմէին ի պահանջել հարկին։ Միևնոյն ժամանակ շատ բնական էր, որ հայոց մէջ այս նկատմամբ հայեացքները տարբերուէին. այսինքն ոմանք գտնէին, թէ Անգլիան կամ անգլիական քաղաքականութիւնն էր ամենից աւելի նպաստաւորը հայ ժողովրդի անմիջական շահերին, և նրան ապաւինէին. ուրիշներն աւելի վստահութիւն ցոյց տային ռուսական քաղաքականութեան և որոշակի յարէին նրան. իսկ մի մասն էլ հաւատարիմ մնար իր դարաւոր տիրապետողին և չնայելով սրա ակնյայտնի սնանկ քաղաքականութեան՝ այնու ամենայնիւ շարունակէր իր գոյութիւնը կապել նրա բախտի հետ։ Այս տարբեր հայեացքները հարկաւ ծնունդ պիտի տային տարբեր ուղղութիւնների։ Եւ իրօք գոյութիւն էին առած այս զանազան ուղղութիւններն ընտանձնող կուսակցութիւններ, որոնք թէև ոչ որոշ կազմակերպութիւն առած, բայց իրանց տարբեր կողմեր ուղղուած հայեացքներովն և ձգտումներովը մինչև մի աստիճան բաժանում էին մտցնում ընդհանուր ազգային գործունէութեան մէջ և ջլատում նրա ներքին և արտաքին բարոյական ոյժը։

Այս կուսակցութիւնները մօտաւորապէս հետևեալներն էին.

ա) **Ռուսասէրները**, որոնք ամենից բազմաթիւ էին։ Մանաւանդ վերջին յաղթութիւնից յետոյ հայ ժողովրդի մեծագոյն

մասը համակիր էր Ռուսաստանին և շատ կարևոր մտաւոր ոյժեր Ռուսաստանի թևարկութեան տակ մտնելը հայ ազգի ապագայ բարօրութեանը միակ շօշափելի գրաւական էին ընդունում։ Այս պատճառով էլ ռուսական իշխանութեան ապաւինելով նրա միջնորդութեամբ Թիւրքիայում տանելի կեանք ստեղծելը՝ հայի համար միակ գործնական ճանապարհն էին համարում։ Ռուսասէրների պարագլուխներն էին Մատթէոս Իզմիրլեան և Խորէն Նար-Բէյ եպիսկոպոսները, որոնց հետ էր ազգային երեսփոխանների մեծամասնութիւնը։ Այս կուսակցութիւնը գտնում էր, որ միակ պետութիւն, որ կարող էր էական պաշտպանութիւն ցոյց տալ Հայաստանին, Ռուսաստանն է։ «Մենք պաշտպանութիւն կը յուսանք Ռուսաստանէն,—գրում էին «Մշակին» Կ. Պօլսից, — որովհետև նա մեզ սահմանակից մի տէրութիւն է, գիտէ մեր խղճալի դրութիւնը, աւելի մօտէն կրնայ դիտել զմեզ և հարկաւոր եղած ժամանակ կարող է զօրքով եւ նիւթական միջոցներով ալ օգնել մեզ, քանի որ մեզ դրացի է և շատ անգամ զոհողութիւններ յանձն առած է արևելեան քրիստոնեայ ազգերու պաշտպանութեան անունով, իսկ Անգղիան ոչ մեզի մօտիկ է, ոչ ալ քրիստոնեաներուն պաշտպան և փաստաբան կանգնած է երբէք Թուրքին դէմ, այնպէս՝ ինչպէս Ռուսիան։ Նաև Անգղիայի մէջ գրեթէ հայ չկայ, բայց Ռուսիայի մէջ միլիօնէն աւելի եղբայրակիցներ ունինք, որք մեզ դրացի և ազգակից են, կարող են օգնել ու պաշտպանել հարկաւոր եղած ժամանակ, մինչդեռ անգղիական քաղաքականութեան հետևելով, որի խաբէութիւնն և խարդաւանանքներն անվստահութիւն ներշնչած են մեզ, մենք կը հրաւիրենք մեր վրայ հակակրութիւնը մի այնպիսի տէրութեան, որու հզօր բազկին ներքև կը գտնուին բազմաթիւ հայեր, հետևապէս մեր անխոհեմ և անքաղաքագէտ շարժումներով գուցէ վնաս հասցընենք մեր այդ սիրելի եղբայրակիցներուն...*)»։

Միևնոյն լրագրին գրում էին Կ. Պօլսից դեռ 1878-ի ըսկիզբը հետևեալը.

«Ամեն հեռատես հայեր կը խորհին, թէ Լաեարդի (Կ. Պօլսի անգլիական դեսպանի) թելադրութիւններուն անսալով երբ խաբուինք և Ռուսիայի դէմ բողոքել ելլենք, Անգլիայի ինտրիգան կառավարութիւնը յետոյ զմեզ անպաշտպան կը թողու, միմիայն իր սեփական շահերու վրայ մտածելով և համաձայնուելով Ռուսիայի հետ, և մենք ի զուր տեղ Թիւրքիայի ատե-

---

*) «Մշակ» 1878, № 15.

լութիւնը հրաւիրած կը լինինք մեր խեղճ ազգի վրայ...»*)։

Իսկ թէ բուն երկրում, մանաւանդ Կովկասի սահմանակից հայաբնակ գաւառներում, հայ ժողովուրդն ինչ հայեացք ունէր Ռուսաստանի մասին, այդ մենք արդէն պատմել ենք Ա. Մամասում (Գլ. ԺԴ)։

Երկրորդ կարևոր կուսակցութիւնը կազմում էին անգլիասէրները։ Սրանց մէջ առաջին տեղը բռնում էին բողոքական հայերն, որոնք ի սկզբանէ անտի վայելած լինելով բողոքական Անգլիայի հովանաւորութիւնը՝ նրա բնական դաշնակիցներն էին Թիւրքիայում։ Բայց անգլիասէրների մէջ շատ աւելի կարևոր էին հայոց ազգայնական-ազատականները (national-liberal)։ Այս խումբն իր քաղաքական համոզմունքներովը համակրում էր ազատական Անգլիային, մանաւանդ երբ վերջին տարիներն անգլիական հասարակութիւնն և նոյն իսկ կառավարութեան անդամները յաճախ իրանց համակրութիւնն էին ցոյց տալիս հայոց։ Անգլիասէրներ էին գլխաւորաբար առաջնակարգ դասն և Ռուսաստանի դէմ ի սկզբանէ հակակրութիւն ունեցող բազմաթիւ ազգային գործիչներ, գրագէտներ և ազդեցիկ հոգևորականներ, ինչպէս էր օրինակի համար Մկրտ. արքեպ. Խրիմեան։ Անգլիասէրների գլխաւոր ոյժն էր Գր. Օտեան, որ գրեթէ ուղղութիւն էր տալիս այն ժամանակ ազգային կեանքին, Ներսէս պատրիարքի բացարձակ վստահութեանը վրայ յենուած։ Այս կուսակցութեան թև ու թիկունք էին Անգլիայի և առանձնապէս Հնդկաստանի հայերից մի քանի կարևոր գործիչներ, յատկապէս Սէթ Աբգար հնդկահայն, որոնք Լոնդոնում սերտ յարաբերութիւն էին մշակում անգլիական խորհրդարանական և կառավարական շրջանների հետ։ Բացի դրանից՝ նրա կողմն էր անցել նաև հայ-կաթոլիկների խումբը։ Անգլիասէրները պայքար էին մղում ռուսական կուսակցութեան դէմ։ Նրանք շարունակ խորհրդակցում էին անգլիական դեսպան Լէյըրդի հետ, որ եռանդով գործում էր հայոց մէջ ընդդէմ Ռուսաստանի։ Միևնոյն ժամանակ հայերն աշխատում էին անգլիական ազդեցիկ մամուլի միջոցով գրաւել անգլիական հասարակաց կարծիքն իրանց կողմը։ Այս նպատակով նրանք ազդում էին անգլիական թղթակիցների վրայ։

«Ուղարկում եմ Ձեզ,—գրում էր «Թայմզի» թղթակիցը Կ. Պոլսից,—այն վաւերագիրն (document), որի մէջ, ինչպէս ես կարծում եմ, կատարելապէս արտայայտուած է զարգացած հայե-

*) Անդ։

րի կարծիքը, թէ ինչ ազդեցութիւն պէտք է անի նրանց երկրի վրայ Ռուսաստանի և Թիւրքիայի միջև կայացած դաշնադրութիւնը: Մի հայ գրում է ինձ, որ իր հայրենակիցները վախենում են, թէ Ռուսաստանը կարող է քաջալերել թիւրքերի անկարգութիւնները, որպէս զի դըանից օգուտ քաղէ և ատտիճանաբար կլանէ Հայաստանը: Այս պատճառով հայերն աղաչում են Անգլիային, որ օգնէ նրանց ինքնավարութիւն ձեռք բերելուն, Եւրոպայի երաշխաւորութեան տակ: Հայերը յուսադրում են, թէ ինքնավար Հայաստանն արգելք կը դառնայ ռուսաց դէպի Հնդկաստան արշաւելուն և թէ հայերն իրանց ազգային բնաւորութեամբ աւելի սիրով կընտելանան անգլիական քաղաքականութեան, որ իսկական քաղաքականութիւն է, քան թէ ռուսաց կեղծ քաղաքականութեան հետ»*):

Անգլիասէրներն ոչ մի միջոց չէին խնայում հայ ժողովրդի մէջ Ռուսաստանի հմայքը կործանելու համար, որպէս զի ռուսասէրների ջանքերը չէզոքացնեն: Անգլիական կուսակցութիւնը պնդում էր, թէ «Ռուսաստանն ամբողջ այս դարի (ԺԹ.) ընթացքում երբ թէ ոչինչ չէ արել ի նպաստ հայոց: 40 տարի յառաջ Ներսէս Ե. կաթողիկոսն, ասում են այս ազգասէրները, չխնայեց ոչ մի զոհաբերութիւն, Պասկեվիչին օգնեց Երևանը պարսից լուծից ազատելու: Իսկ այն թշուառութիւննե՞րն, որ այս պատերազմի ժամանակ հայերը կրեցին. հրդեհ Վանում և Բայբուրդում, կոտորած Բայազիտում, խմբովին գաղթ Ալաշկերտից և այլն: Եւ Ռուսաստանն ոչինչ չարաւ դրանց առաջն առնելու համար: Սան-Ստէֆանոյի դաշնագրում ԺԶ. յօդուածը բարենորոգումներ է պահանջում հայերի համար: Բարենորոգումներ, շարունակում են անգլիասէրները, մեզ խոստացուած էին թէ 60-ական թուականներին և թէ Միդհատի Սահմանադրութեամբ: Ի՞նչ ելաւ դրանից: Նայեցէք մեր կաթողիկոսին Էջմիածնում. օգտվո՞ւմ է նա արդեօք որևէ արտօնութիւնով: Զվերցրի՞ն նրանից հարիւրաւոր գիւղեր: Ո՞ւր են մեր ազատ դպրոցները, ո՞ւր է հայերէնի ազատ գործածումը պաշտօնական հիմնարկութիւններում...: Անգլիասէրների բոլոր ընդդիմախօսութիւններն այս ոգով են...»**):

Երրորդ՝ կաթոլիկական կուսակցութիւնը նոյնպէս ազդեցիկ անձեր ունէր իր մէջ, որոնց գլխաւորն էր Յովհ. Սագըզ: Բայց այն միջոցին մեծ դեր էր խաղում ազգային հարցում Անտոն

*) «Times», Նամակ Կ. Պօլսից, 6 մարտի 1878 թ.: «Մշակ», 15 մարտի 1878 թ.:

**) «Обзоръ» (Թիֆլիս), № 129, 16 մայիսի 1878 թ.:

Հասան պատրիարք-կաթողիկոսը։ Շատերի համար բոլորովին անսպասելի կերպով Հասան եռանդով մասնակցում էր հայկական խնդրին։ Նա պաշտպանում էր անգլիասէրների կողմն ընդդէմ ռուսասէրների։ Իտալական և ֆրանսիական դեսպանների վրայ իր ունեցած ազդեցութիւնը գործադրելով միջնորդում էր, որ Իտալիան և Ֆրանսիան պաշտպանութիւն անեն Թիւրքիայի հայերին և չթողնեն Ռուսաստանի ձեռքն, որովհետև Ռուսաստանն իբր թէ ձգտում է Արևելքի բոլոր միւս կրօնները ջնջել…։ Ռուսաստանի դէմ մղուած այս պայքարին մասնակցում էր անգլիական դեսպանատան երէցն, որ մօտ յարաբերութեան մէջ էր անգլիասէրների հետ և գործում էր սրանց հետ իբրև միևնոյն քաղաքական համոզմունքի տէր։

Չորրորդ կուսակցութիւնը կազմում էին թրքասէրները, որոնք պատերազմից յառաջ ամենից ազդեցիկ և ամենից աւելի տիրողն էին։ Գրեթէ բոլոր մեծ վաճառականները, կապալառուներն և սեղանաւորները թրքասէրներ էին։ Շատերն էլ այդպէս էին ձևանում մահմեդական մոլեռանդութիւնը չգրգռելու և իրանց անձնական շահերը չվտանգելու համար։ Սակայն Թիւրքիայի պարտութիւնը մեծ հարուած եղաւ թրքասէրներին, որոնց խումբն այս պատճառով սաստիկ փոքրացաւ։ Այժմ այդ խումբին պատկանում էին միայն կառավարութեան ստորին աստիճանաւորները, քաղաքապետութեան պաշտօնեաներն և այն կարգի անձերն, որոնք իբրև փոքր հարստահարիչներ՝ օգտվում էին թրքական յոռի վարչութիւնից։ Այս կուսակցութիւնն իր ծրագրի պաշտպանութեան համար յառաջ էր բերում միայն այս պարագան, թէ թրքական իշխանութեան տակ ազգային եկեղեցին անվթար պահպանուած է…։

Բայց կուսակցական այս բաժանումն երկար չտևեց։ Քաղաքական դէպքերը շատ արագ փոփոխութիւն էին մտցնում գործի ընթացքում և ըստ այնմ էլ հանգամանքները նոր դասաւորութիւն ստանում։ Սան-Ստէֆանոյի դաշնադրութիւնը կապուելուց յետոյ նրա բոլոր պայմանների եւրոպական քննութեան ենթարկուելու որոշումն, Իզմիրլեանի Էջմիածնում և Նար-Բէյի Պետերբուրգում ունեցած անյաջողութիւններն և Բ. Դրան իսկ իր աչքերը մեծ յոյսով դէպի ապագայ կոնգրէսն ուղղելն առանց ազդեցութեան չմնացին հայոց համար։ Այնուհետև համարեա բոլոր ազգային գործիչները լռելեայն համերաշխութիւն կայացնելով՝ կուսակցութիւնները գրեթէ դադրեցին առանձին առանձին գործելուց և բոլորը համախմբուեցին Ներսէսի շուրջը, Բերլինի կոնգրէսի մէջ Հայկական խնդիրը

պատշաճաւոր կերպով ներկայացնելու և եւրոպական հասարակական կարծիքն ազգային դատին նպաստաւոր դարձնելու։

«Այստեղ,—գրում էին Կ. Պոլսից,—ազգային զգացումը շատ ոգեւորուած է այժմ. ամեն հայ կը զգայ, թէ հայրենիքի փրկութեան ժամն հնչած է և թէ պէտք է գործել։ Կուսակցական ոգիները լռած են և Հայաստանի ոգին է, որ կը խօսի միայն. սրբազան Ներսէս պատրիարք իր ազգասիրական եռանդով և գործունէութեամբ մոռցնել տուաւ իր բոլոր անցեալ սխալներն և ամեն կուսակցութեան ալ սիրելին եղած է այժմ...»*)։

Ներսէս պատրիարք այլևս իր սովորական հրաժարագիրները չէր ուղղում Ազգ. Ժողովին։ Նա շրջապատուած եպիսկոպոսներով և աշխարհական խորհրդականներով, որոնց անունները տուած ենք վերև, զբաղուած էր մեծ եռանդով, ղեկավարելով «Հայկական Խնդիրը»**)։

Այս համերաշխութիւնը միմիայն լուսաւորչական հայերի մէջ չէր, այլ այլադաւան ազգայիններն ևս ամեն հասարակական խտրութիւն թողած՝ միացել էին և գործում էին նրանց հետ, որ քիչ ուրախութիւն չէր պատճառում թէ Կ. Պոլսում***) և թէ Թիֆլիսում****)։ Հայ կաթոլիկ հոգևորականներ եռանդով ազգային գաղափարներ էին տարածում։ Նոյն իսկ հայ կաթոլիկ եկեղեցին ազգային համերաշխութեան տեսարան էր ներ-

*) «Մշակ», 1878, № 48.

**) Ահա ինչ էին գրում այս առթիւ Կ. Պոլսի լրագիրները։ «Հիմա ս. պատրիարք հայրը հրաժարականի խօսք ըրած չունի։ Եկեղեցականութեան եւ պատրիարքի մէջ քիչ ատեն առաջ անհամաձայնութիւն կար. հիմա այդ չկայ։ Երեսփոխանութեան մէջ կուսակցութիւնները բաժանեալ էին կարծեաց տարբերութեամբ. հիմա այդ կուսակցութիւնները միացած են։ Ազգի մէջ բաժանումներ կային. գլխաւորաբար Բ. Դրան հայ պաշտոնեաներէն ոմանք ազգին մտածմանցը հակառակ կը մտածէին. հիմա այդ տարբեր մտածումն ալ չկայ։ Վերջապէս չենք կարծեր թէ հայոց ազգը հիմակուան չափ միացեալ ժամանակ մը ունեցած ըլլայ» («Նոր-Դար», Կ. Պոլիս)։

***) «Ազգը կրօնքով զանազան մասանց մէջ բաժանեալ ըլլալով ամեն մաս իր շահուն համեմատ կը մտածէր. հիմա ամէնքը ազգային բարձրագոյն շահերուն վրայ միացած են», —գրում էր Կ. Պոլսի «Նոր-Դարը»։

****) Ահա ինչ էր գրում «Մշակը» այս առթիւ. «Ինչպէս առաջին անգամ ռուսաց կառավարութեան՝ Թիֆլիսի հայերի կողմից ներկայացրած ուղերձին մասնակցեցին իրանց ստորագրութիւններով Թիֆլիսի կաթոլիկ և բողոքական հայերը, այնպէս էլ այժմ Կ. Պոլսի հայերի բոլոր կուսակցութիւնները և դաւանութիւնները, թողնելով իրանց դարևոր վէճերը, միացան ընդհանուր գործի համար»։

կայացնում *)։ Այս միևնոյն խնդրի մասին ահա ինչ էր գրում պրոֆէսոր Անդրէաս Արծրունին Բերլինից. «Այս ընդհանուր գործի մէջ ոչ կուսակցութիւնների, ոչ դաւանութիւնների տարբերութիւն կայ։ Թէ այսպէս անուանուած Ռուսաստանի կուսակիցները, թէ Անգլիայի կուսակցութիւնը, թէ լուսաւորչական, կաթոլիկ և բողոքական, բոլորն էլ միասին մի կուսակցութիւն են կազմում, որ կարելի է ազգային անուանել. ամենքն էլ մոռացան իրանց անձնական հաշիւներն և միաւորուել են մի ընդհանուր գործի համար**)։

Սան-Ստէֆանոյի դաշնադրութիւնից յետոյ մարտի 14/26-ին մեծ իշխան Նիկոլայ Նիկոլայեվիչ Կ. Պոլիս այցելութեան եկաւ սուլթան Համիդին, որ մեծ պատիւներով ընդունեց նրան և փոխադարձ այցելութիւն տուեց Բոսֆորի եզերքի վրայ Բէյլէրբէյի պալատն, որ մեծ իշխանի բնակութեանն էր յատկացուած։ Մեծ իշխանն այնուհետև երկար չմնաց բանակում և պատրաստվում էր մեկնել Ռուսաստան։ Ներսէս պատրիարք երախտագիտական պարտք ունէր հատուցանելու իշխանին, ուստի Զատկի երկրորդ օրը գնաց Սան-Ստէֆանո թէ այդ պարտքը կատարելու և թէ Զատկի տօնը շնորհաւորելու։ Պատրիարքին սիրալիր ընդունելութիւն ցոյց տրուեց։ Ներսէս իր երախտագիտական զգացմունքը յայտնելով մի գեղեցիկ ոսկէ խաչ մատոյց, որը Նիկոլայ Նիկոլայեվիչ ընդունեց շնորհակալութեամբ։ Բայց այս տեսակցութիւնը պարզ քաղաքավարական կամ Զատկի շնորհաւորութեան այցելութիւն չմնաց։ Այդտեղ, պարագայից օգտուելով, Ներսէս երկարօրէն խօսեց Հայկական Խնդրի և

---

*) Այն միջոցին Կ. Պոլսում վախճանուեց Վիեննայի Մխիթարեան հայրերից հայր Կղեմէս վ. Սիպիլեան, յայտնի հայ դրամահաւաք, հնագէտ և եւրոպական հնագիտական ընկերութիւնների անդամ։ Սիպիլեան 12 տարի շարունակ Հայաստանի զանազան կողմերը ճանապարհորդելուց և հնագիտական խուզարկութիւններ կատարելուց յետոյ անցել էր Կիլիկիա և այնտեղ էր գործել նոյն նպատակով։ Հ. Սիպիլեան եռանդուն ազգասէր էր. թէ ընտանեկան շրջաններում, թէ ազգային լսարաններում և թէ մասնաւոր անհատների մօտ Հայաստանի և հայութեան սէրն էր քարոզում բոլորին։ Նրա մահը ընդհանուր համազգային ցոյցի առիթ եղաւ։ Միջագիւղի (Կ. Պոլսի մի արուարձանը) հայ-կաթոլիկ եկեղեցում հոգեհանգստի ժամանակ Կ. Պոլսի ամեն կողմից հաւաքուել էին մեծ բազմութեամբ, առանց կրօնական խտրութեան, թէ լուսաւորչական և թէ բողոքական հայեր։ Հայ-լուսաւորչական հոգևորականներ կանգնել էին կաթոլիկ եկեղեցու դասում։ Դամբանական խօսելու հրաւիրուեց մի հայ-կաթոլիկ երիտասարդ վանական (Անտոնեան միաբանութեան անդամ հայր Մաղաքիա վ. Օրմանեան), որ ազգային ոգով ներշնչուած մի գեղեցիկ ճառ խօսեց այնտեղ։

**) «Մշակ», 1878, № 108.

Հայաստանի վիճակի վրայ և մի տեղեկագիր էլ ներկայացրեց, թէ ինչ բռնութիւնների և աւարի են ենթարկուել մի քանի հայ գիւղեր ռուսական զօրքի այն տեղերից քաշուելուց յետոյ։ Ներսէս խնդրեց, որ իրերի այս վիճակը ներկայացուի Ալեքսանդր Բ. կայսեր, «որի վրայ են դրած հայերն իրանց միակ յոյսը. միայն նրա մէջն են,—ասաց նա,—հայերը տեսնում իրանց փրկութիւնը»*)։

Մեծ իշխանի յանձնարարութեամբ Սկօբելեվ կրտսեր զօրավարը փոխադարձ այցելութեան եկաւ Կ. Պոլիս Ներսէս պատրիարքին, որ պատշաճաւոր ընդունելութիւն ցոյց տուեց նրան։

Սան-Ստէֆանօյից յետոյ Ներսէս պատրիարք Վարժապետեան Օտեանի և հակառուս խմբերի պատճառաբանութիւններն ընդգրկելով իր աչքերն ուղղեց դէպի Անգլիան, առանց սակայն իր յարաբերութիւնները խզելու ռուսական քաղաքականութիւնից, գոնէ արտաքուստ։ Նա սկսեց յաճախ տեսնուել դեսպան Լէյըրդի հետ, որ բացարձակօրէն խորհուրդ էր տալիս Հայաստանի համար տեղական ինքնավարութիւն պահանջելու, ընդդիմանալով ռուսական տիրապետութեան տակ մնալու մտքին, և յուսադրում էր, թէ Անգլիան առաջիկայ կօնգրէսում կը պաշտպանէ այս ծրագիրը։ Եւ որովհետև սադրազամ Ահմէդ Վէֆիկ փաշան, իբրև ջերմ անգլիասէր, մտերիմ էր անգլիական դեսպանին, ուստի այս վերջինի, գուցէ և հայ պաշտօնեաների միջոցով Թրքական կառավարութիւնը տեղեակ էր անշուշտ անցած-դարձածին և բնականաբար քաջալերում էր Հայկական Խնդրի առած այս նոր ուղղութիւնը։ Այս հանգամանքներումն էր, որ որոշուեց յանուն հայ ազգի պատուիրակութիւն ուղարկել այն բոլոր եւրոպական տէրութիւններին, որոնք պիտի մասնակցէին առաջիկայ կօնգրէսին և որոնց արդէն մատուցուած էր Հայաստանի վիճակի մասին մի ընդարձակ յիշատակագիր։

Բայց թէ եւրոպական տէրութիւններին Հայաստանի մասին քաղաքական յիշատակագիր ներկայացուելն և թէ եւրոպական մայրաքաղաքները յատուկ պատգամաւորներ ուղարկելն այնչափ համարձակ քայլեր էին համարւում, որ ի սկզբան շատ գաղտնի պահուեցին Թիւրք կառավարութիւնից։ Պատուիրակութիւնն ուղարկելիս Ներսէս և նրա խորհրդականների կամ աւելի ճիշտը նրա գործակիցների խումբն առանձնապէս յոյս ու-

*) «Голосъ», 2 մայիսի 1878 թ.: «Մեղու Հայաստանի», 1878 № 18։

նէին Անգլիայի վրայ, որ Թիւրքիայի պաշտպանն էր հանդիսանում այն ժամանակ, և գլխաւորաբար Լօնդօնումն էր, որ պատուիրակութիւնը պիտի աշխատէր գործել յօգուտ Հայաստանի ինքնավարութեան իրականացման, ինչպէս գրեթէ խոստացել էր Լէյըրդ։ Օտեանի խորհրդով պատուիրակ կարգուեց Խրիմեան, իբր նախկին պատրիարք, իբր Հայաստանի վիճակին շատ լաւ տեղեակ և իբր իր դիրքով ու դէմքով տպաւորութիւն անող անձ։ Եւ որովհետև Խրիմեան ոչ մի եւրոպական լեզու չգիտէր, ուստի նոյն Օտեանի յանձնարարութեամբ իբրև քարտուղար և թարգման նրան ընկերացաւ Մինաս Չերազ։ Ազգային վարչութիւնն և ազգային երեսփոխանները լռելեայն համամիտ էին այս պատուիրակութեան։ Խրիմեան իր մեկնելուց յառաջ Կ. Պօլսում տեսնուեց ֆրանսիական նոր դեսպան Ֆուռնիէի հետ էլ, որ գործում էր իբրև Անգլիայի համակիր, ուրեմն և ընդդէմ Ռուսաստանի*)։

---

## ԳԼՈՒԽ ԵՕԹՆԵՐՈՐԴ

*Հայ պատուիրակութիւնը. — Խրիմեան Հայրիկ և Մինաս Չերազ.—Նրանց մեկնումը Կ. Պօլսից.—Պատուիրակութեան գործունէութիւնը Հռոմում և Պարիզում։*

Եւրոպական դահլիճներին հայ դատը ներկայացնելու համար որոշուած պատուիրակութիւնը Կ. Պօլսից մեկնեց մարտի 8/20-ին։ Ոչ բուն պատուիրակն և ոչ իր թարգմանը՝ խստիւ դատելով՝ չէին այս պաշտօնի համար բուն յարմար անձինք կամ, ինչպէս անգլիացիք ասում են, the right man in the right place. Խրիմեան անծանօթ էր Եւրոպայի, չունէր դիւանագիտական հմտութիւն և ոչ մի եւրոպական լեզու չգիտէր**). միայն իր նախկին-պատրիարք***) տիտղոսն էր, որ որոշ դիրք

---

*) «Politische Correspondenz», Նամակ Կ. Պօլսից, 22 մարտի 1878 Թ.։

**) Նրա այցետոմսի վրայ գրուած էր՝ «Մկրտիչ Խրիմեան, արքեպիսկոպոս Տարօնի և նախկին պատրիարք Թիւրքիոյ հայոց»։

***) Խրիմեան ապրիլին Մանչէստրում գտնուած ժամանակ երբ այնտեղի հայ գործիչների հետ խորհրդակցութիւններ է կատարում, թէ ինչ ուղղութեան պէտք էր հետևել Լօնդօնում և Բերլինում, մէկը նրան հարցնում է, թէ ինչպէ՞ս պիտի կարողանար յաջողութեամբ կատարել իր պա-

պիտի տար նրան։ Աւելի յաջող չէր իր քարտուղարի և թարգմանի ընտրութիւնը։ Եթէ Խրիմեան, բուն պատուիրակը, անտեղեակ էր եւրոպական կարգերի, անտեղեակ էր քաղաքականութեան և հնարաւորութիւն չունէր անձամբ իր միտքը յայտնելու, գոնէ իր թարգմանը մասամբ պէտք էր լրացնել այս պակասը։ Բայց Մինաս Չերազ կատարելապէս անփորձ*) մի երիտասարդ էր. Նրա միակ առաւելութիւնն այն էր, որ ֆրանսերէն էր իմանում և ազգասիրական խանդ ունէր, որ անշուշտ բաւական չէր այսպիսի ամենալուրջ գործի համար։ Եւ այսպէս՝ ոչ առաջին պատուիրակն և ոչ իր թարգմանը համապատասխան չէին, որ հաւանականաբար առանց հետքի չէ մնացած իրանց պաշտօնավարութեան ժամանակ։ Խորէն եպ. Նար-Բէյ, ճիշտ է, գիտէր եւրոպական լեզուներ, բայց իր յեղյեղ բնաւորութեամբն և իր քաղաքագիտական անհմտութեամբ նոյնպէս մեծ յարմարութիւն չունէր իրան յանձնուած պաշտօնին։ Այս մասին դեռ այսչափ։

Խրիմեան դուրս ելաւ Կ. Պօլսից դէպի Իտալիա և երկիւղ ունէր, թէ իր մեկնումը կը յայտնուի, և կառավարութիւնը կարգելէ ճանապարհը շարունակել**). բայց կառավարութիւնն այնչափ մեծ վտանգ չէր տեսնում Նրա ճանապարհորդութեան մէջ, որ արգելք հանդիսանար։ Նրանք իջան Բրինդիզի, որտեղից երկաթուղով մեկնեցին Հռոմ։ Սա առաջին եւրոպական մայրաքաղաքն էր, ուր ի գործ պիտի դնէին իրանց առաքելութիւնը։

Այն յիշատակագիրն, որ Խրիմեան պիտի ներկայացնէր

---

տուիրակի պաշտօնը, քանի որ ոչ մի եւրոպական լեզու չէր իմանում։ Եւ նա պատասխանում է. «Պիտի խօսիմ լեզու մը, որ համաշխարհային է և տառապանքի լեզուն է միևնոյն ժամանակ. այսինքն պիտի լամ»...։

Խրիմեան, սակայն, շատ չանցած ինքն էլ համոզուեց, թէ լացը քաղաքական աշխարհի համար շատ անզօր լեզու է, և վերադարձին պէտք զգաց խօսել երկաթէ գդալով «հարիսա» ուտելու մասին...

*) Ահա թէ ինչ է գրում Չերազ ինքն իր մասին. «Բիւզանդիոնի մէջ՝ կեանքս երկու աստիճան միայն ունեցած էր. ուսանող եղած էի, ապա ուսուցիչ. տեսած էի դպրոցներ միայն և ոչ մի պաշտօնատուն նշմարած էի երբեք. դիւանագիտական ասպարէզն անծանօթ էր ինձ, որպէս աշխարհ անծանօթ էր Ադամի, երբ սա դրախտի մէջ էր դեռ։ Ուստի ոչ ոք պիտի զարմանայ լսելով թէ երբ պաշտօնատունի (Հռոմի արտաքին գործերի մինիստրութեան) քարէ սանդուխները վեր ելայ, սիրտս տրոփեց ծոցիս մէջ...»։ («Հայաստան և Իտալիա», Կ. Պօլիս, 1879, էջ 28)։

**) Մ. Չերազ գրում է. «...անհնար չէ, որ երբ մեր երթի համբաւն տարածուի Բիւզանդիոնի մէջ, մի հեռագիր կասեցունէ զմեզ այդ Նեղուցի մէջ...»։ («Հայաստան և Իտալիա», էջ 24)։

դահլիճներին, հայերէն էր յանձնուել նրան, և Զերազին է թողուել ֆրանսերէն թարգմանել ճանապարհին։ Բացի դրանից՝ Խրիմեան ունէր մի պաշտօնական վկայագիր Թիւրքիոյ հայոց պատրիարքից, իր պատուիրակութեան պաշտօնը հաստատող։

Եթէ ճիշտ են այն բացատրութիւններն, որ Մ. Զերազ գործածել է իտալական արտաքին գործոց մինիստրութեան մէջ, պէտք է ասել, որ պատուիրակութեան առաջին իսկ քայլն անյաջող էր, որովհետև իսկոյն մատնում էր, թէ Խրիմեան և իր թարգմանը չափազանցութիւններով են ուզում շլացնել իրանց խօսակիցներին՝ փոխանակ միշտ ճշմարտութեան շաւղի մէջ մնալու*)։

Մարտ 15/27-ին Խրիմեան և Զերազ ներկայացան արտաքին գործերի մինիստր կոմս Կօրտիին (Corti), որ Կ. Պօլսից էր եկել նրանց հետ միևնոյն շոգենաւով, բայց առիթ չէին ունեցել ծանօթանալու։ Թէ որքան տեղեկութիւն ունի մինիստրը Հայաստանի մասին, այդ երևում է նրա հարցումից. բայց թողնենք, որ Զերազ ինքը խօսի։

Կոմս Կօրտի ուզում էր լսել, թէ հայ պատուիրակներն ինչ էին խնդրում, և ասում է. «Կարդացի արդէն այն պաշտօնագիրներ, որք երէկ յանձնուեցան ընդհանուր քարտուղարին։ Հայերը վարչական ինքնօրէնութիւն կը պահանջեն, այլ Եւրոպական թէ Ասիական Տաճկաստանի մէջ»։

Եւ Խրիմեան հարկադրվում է ուղղել մինիստրի աշխարհագրական ծանօթութեան պակասը։ «Ճշմարիտ է,—ասում է նա,—հայեր կան Տաճկաստանի եւրոպական մասին մէջ, այլ ազգի մեծամասնութիւնն ասիական մասին մէջ է, Օսմանեան Հայաստանի մէջ, ուր կը ցանկամք ունենալ վարչական ինքնօրէնութիւն»**)։ Պարզ էր, որ Կօրտի չէր կարդացած հայոց յիշատակագիրը կամ շատ վեր ի վերոյ կերպով, այլապէս նա, որ Կ. Պօլսի դեսպան էր եղած, չէր կարող չգիտենալ գոնէ, որ յիշատակագրի մէջ յիշուած քաղաքները Փոքր-Ասիոյ մէջ էին և ոչ թէ Եւրոպական Թիւրքիայի մէջ։ Այս մտածումով էլ Զերազ ի դիմաց Խրիմեանի բացատրութիւններ է տալիս։ Նոր բան չէ ասում նա. փաստականից աւելի աղերսականն է, որ խօսում է

---

*) Մ. Զերազ պատմում է, թէ ինք ասել է կոմս Տօրնիէլլիին. «Հայաստանի բարձրաշնորհ նախկին պատրիարքն, գլուխ մի եկեղեցիի, որ 5,000,000 քրիստոնեայ կը վարէ Արևելքի մէջ...»։ Թիւրքիոյ հայոց պատրիարքը գլուխ հինգ միլիոն հայի... այսինքն չափազանցրած աւելի քան երկու անգամ։

**) «Հայաստան և Իտալիա», Կ. Պօլիս, 1879 թ., էջ 35.

*նրա բերանով։ Մի քանի պատանեկական եռանդից բղխած շողոքորթութիւններ և անճշտութիւններ դարձեալ սահում են նրա լեզուից, բայց իտալական մինիստրն, որ չգիտէր թէ Հայաստանը Ասիական Թիւրքիայումն է թէ Եւրոպականում, եւս աւելի չէր կարող անդրադառնալ այս անմեղ չափազանցութիւնների վրայ*)։ Հայ պատուիրակութեան երկար բացատրութիւններին կոմս Կօրտի պատասխանել է. «Շատ շնորհակալ եմ այն համակիր զգացումներէ, զորս հայ ժողովուրդն կը տածէ մեր ազգի նկատմամբ։ Գոհ եմ այն բացատրութիւններէ, որովք լուսաբանեցիք ձեր դատ։ Դեռ երէկ դեսպան էի Տաճկաստանի մէջ և կը խոստովանիմ, թէ ձեր գանգատներ չեն անիրաւ։ Որպէս յայտնեցի ձեզ, կարդացած եմ ձեր յիշատակագիր և մեծ կարևորութիւն կուտամ հայ ազգի դատին։ Կը խոստանամ ձեզ պաշտպան կանգնիլ ձեր դատի, վեհաժողովին (կօնգրէս) մէջ, եթէ տեղի ունենայ, և ամեն առթի մէջ, եթէ վեհաժողով չգումարուի։ Գիտէք թէ ազգայնութիւնն մի սկիզբ (սկզբունք) է, ուր Իտալիա կը պարտի իւր գոյութիւն. ձեր դատ կը պատկանի այդ սկզբի, ուստի ապահով եղէք թէ ոչ մի պետութիւն աւելի համակիր է նմա, քան Իտալիա»**)։*

*Խրիմեան՝ գոհ այս խոստմնալից պատասխանից՝ հիանում է օրհնելով իտալական նորապսակ թագաւորին և իր նոր մինիստրութիւնը։*

*Ուրախացած այս առաջին սիրալիր ընդունելութիւնից, Ջէրազ՝ իրան տրուած հրահանգի համաձայն՝ արդիւնքը հեռագրում է Կ. Պոլիս Ստեփան Փափազեանին, որ նա հաղորդէ պատրիարքին և իր խմբին։ Ուղղակի պատրիարքին դեռ չէր հեռագրվում, որովհետև պատուիրակութեան մեկնումն և նպատակն, ինչպէս արդէն յիշեցինք, դեռ գաղտնի էր պահվում կառավարութիւնից, բայց միևնոյն ժամանակ Ջէրազ յատուկ նամակներով ամեն ինչ բացատրում էր պատրիարքին։*

*Խրիմեան և իր քարտուղարը Հռոմից մեկնելով մարտի 19/31-ին հասնում են Պարիզ։*

---

**) Հետաքրքրական է, թէ ինչպէս թեթևութեամբ խաղում է Ջերազ թուերի հետ։ Մի օր յառաջ Թիւրքիայի հայոց թիւը հանել էր հինգ միլիոնի։ Իսկ այս անգամ իր միևնոյն ճառի սկզբում իջեցնում է նախ 4 միլիոնի և ապա ճառի վերջում 3 միլիոնի, որ դարձեալ ճիշտ չէր։ (Անդ, էջ 37)։*

***) Անդ էջ 40—41.*

****) Հեռագրի պատճէնը Ջերազ յառաջ է բերած իր գրքոյկում, այս ձևով. «Ընտիր առողջութիւն։ Մանրամասնութիւնները նամակով։ Վաղը պիտի մեկնիմ Պարիզ։ Լուր տուէք ընտանիքիս։ Մինաս»։*

Պարիզ հասնելու երկրորդ օրը Խրիմեան այցելեց Նուպար փաշային, իր պատուիրակութեան նպատակի մասին նրա հետ խորհրդակցելու համար: Նուպար գիտէր արդէն, թէ Ներսէս-Օտեան խումբն ինչ յանձնարարական էր տուած իր պատուիրակին: Նրան յայտնի էր նաև, թէ պատրիարքն և իր խորհրդակիցներն՝ ոչ աւել և ոչ պակաս՝ Հայաստանի ինքնավարութիւն էին պահանջում Լիբանանի իշխանութեան նման, այն է՝ տեղական ինքնօրինութիւն սուլթանի գերիշխանութեան և Եւրոպայի երաշխաւորութեան տակ: Պօլսում ենթադրում էին և յոյս իսկ ունէին, թէ քաղաքական ներկայ հանգամանքներում ամենայարմար առիթն էր մի անգամ ընդ միշտ ազատուելու տառապող ժողովրդի կացութիւնից և ձեռք բերելու ինքնավար ազգի իրաւունքը: Նուպար փաշա շատ ընդարձակ էր գտնում ինքնավարութեան ծրագիրը, չէր հաւատում, թէ Ռուսաստանի և Անգլիայի միջև տիրող ներկայ թշնամութեան ռօպէին նրանք համաձայնէին Հայաստանին ինքնավարութիւն տալու և թէ ոչ էլ Թիւրքիան իր հաւանութիւնը կը տար դրան: Իսկ միւս եւրոպական տէրութիւնները շատ քիչ էին շահագրգռուած Հայաստանի վիճակով, յիշեալ 3 տէրութիւնների վրայ ճնշում գործ դնելու համար ի նպաստ հայոց: Նուպար փաշա իրան եղած դիմումն ընդունելով առանձին ծրագիր պատրաստեց, որ զգալապէս տարբերվում էր պօլսականից, այն է՝ ինքնավարութեան ծրագրից: Մենք յառաջ պիտի բերենք երկու ծրագիրներն էլ:

Ապրիլի 2-ին (ն. տ.) Չերազ*), յանուն Խրիմեանի, արտաքին գործերի մինիստրութեան յանձնելով իրանց բերած յիշատակագիրն ու ծրագիրը խնդրեց, որ ֆրանսիական արտաքին գործերի մինիստրն ընդունի հայ պատուիրակութիւնը: Տեսնուեց նաև «Le Temps»-ի տնօրէն-խմբագիր Էբրարի հետ և խնդրեց, որ սա ի նպաստ Հայկական Դատի յօդուած գրէ իր ազդեցիկ լրագրում: Այդ ֆրանսիացի նշանաւոր քաղաքագէտ օրագրողը խոստանում է, բայց ասում է, թէ լաւագոյն է, որ «կօնգրէսի գումարուած ժամանակ գրեմ, որպէսզի մինչև այն

---

*) Մ. Չէրազ իր՝ Պարիզում հրատարակած «L'Arménie» թերթում պարբերաբար լոյս է ընծայած հայ պատուիրակութեան գործունէութեան պատմութիւնը Եւրոպայում, որ սկսել է «L'Arménie»-ի 1890 մարտի 15-ի № 5-ից և վերջացել է 1893 թ. յուլիսի 15-ի № 57-ում: Այս պատմութիւնը կրում է «Memoires d'un délégué au congrès de Berlin» (Բերլինի կօնգրէսի մի պատուիրակի յիշողութիւնները) ընդհանուր վերնագիրը: Մենք օգտուել ենք նրա այս պատմութիւնից:

չմոռացուի»։ Ապրիլի 5-ից Խրիմեանն և իր քարտուղար-թարգմանն սկսում են իրանց պաշտօնական այցելութիւնները Պարիզի դիւանագիտական մարմնին։ Այն օրը նրանք գնում են գերմանական դեսպան իշխ. Հօհէնլօհէի մօտ, որ նրանց ասում է. «Հայոց պատրիարքը Գերմանիայի Կ. Պօլսի դեսպանին յանձնել է մի յիշատակագիր իր ժողովրդի դատի մասին։ Դեսպանն այդ յիշատակագիրը Բեռլին ուղարկած լինելով, մեր արտաքին գործերի մինիստրութիւնն էլ դրա մի պատճէնն ինձ էր ուղղել. ես կարդացել եմ և ձեր պահանջներն իրաւացի եմ գտել։ Բայց մի կէտ կայ, որ ինձ մութ է թւում։ Հայերը բաւականաչափ ոյժ ունե՞ն մահմեդական հրոսակները զսպելու և իրանց երկիրը կառավարելու...»։ Խրիմեան պատասխանում է, թէ եթէ հայերը զէնք ունենան, կարող են այդ անել։ Ապա իշխ. Հօհէնլօհէն խորհուրդ է տալիս նրանց, թէ «հայերն ինչպէս որ շահել են իրանց կողմ Ռուսաստանի համակրանքն, այնպէս էլ պէտք է աշխատեն գրաւել նաև Անգլիայի բարեկամութիւնը։ Ռուսաստանը,—ասել է նա,—ի նպաստ հայոց դատին լաւ տրամադրուած է երևում»։ Դեսպանը յայտնել է ի վերջոյ, թէ գերմանական կառավարութեան համակրութիւնն էլ հայոց կողմն է։

Հետաքրքրական է ֆրանս. արտաքին գործերի մինիստրի հետ տեղի ունեցած տեսակցութիւնը։

Պ. Ուադինգտոն, մինիստրը, հարցնում է, թէ հայ պատուիրակ նախկին-պատրիարքը ֆրանսերէն չ՞է խօսում արդեօք։ Պատասխանը բնականաբար բացասական է լինում, և Զէրազ թարգմանում է մինիստրի խօսքերը։ Մինիստրն, ըստ Զէրազի նկարագրութեան, ասել է հետևեալը. «Կարդացի ձեր յիշատակագիրը։ Հայաստանի մի մասը պիտի կցուի Ռուսաստանին։ Դուք ո՞ր մասի համար էք ինքնավարութիւն պահանջում, Էրզրումի նահանգի համար»։ Խրիմեան իր թարգմանի միջոցով բացատրութիւն է տալիս, թէ իրանք ոչ միայն Էրզրումի, այլ և Վանի նահանգի, նոյնպէս մասամբ նաև Դիարբէքիրի ու Տրապիզոնի նահանգների համար են ինքնավարութիւն խընդրում և այս առթիւ խորին համակրութիւն են յայտնում Ֆրանսային և ֆրանս. գրականութեան։ Մինիստրը շնորհակալութիւն յայտնելով շարունակել է. «Կարող էք ապահով լինել, որ Ֆրանսիան անտարբեր չէ Հայաստանի վիճակին։ Ես անձամբ համակրում եմ ձեր դատին, որովհետև պատել եմ Ասիայում, ուսումնասիրել եմ ձեր ժողովրդի պատմութիւնն և գրականութիւնը և ճանաչել եմ բազմաթիւ նշանաւոր հայեր։ Ես տրա-

մաղիր եմ ձեր դատը պաշտպանելու կոնգրէսում, ուր ոչ ոք ինձանից լաւ չէ ճանաչում ձեր ազգն և ձեր երկիրը...»: Մինիստրն ունկնդրութեան վերջում պարզ կերպով իր հետևեալ գործնական դիտողութիւններն է անում Հայկական Խնդրի մասին. «Դուք,—ասում է,—կոնգրէսին դրական տեղեկութիւններ պէտք է ներկայացնէք, և այն ժամանակ աւելի լաւ կը հասկանան ձեր դատն, որ այդ կերպով գործնական շաւղի մէջ կը մտնէ: Ձեր յիշատակագիրն ընդհանուր գաղափարներ է միայն բովանդակում, իսկ մեզ հարկաւոր են շօշափելի ապացոյցներ: Յիշատակագիրը Հայաստանի համար այնպիսի վարչութիւն է պահանջում, ինչպէսին ունի Լիբանանը. բայց Լիբանանը կարելի չէ Հայաստանին նմանեցնել: Լիբանանում Թիւրք չկայ, իսկ ձեր երկրում շատ կայ: Հետևաբար Լիբանանի վարչական դրութիւնը չէ կարելի յարմարեցնել Հայաստանին: Պէտք է մի այլ, ընդունելի ծրագիր ներկայացնել կոնգրէսին: Պէտք է մանրամասն վիճակագրական ցուցակ ներկայացնել, թէ հայերն ո՛ր գաւառում մեծամասնութիւն են կազմում, ո՛ր գաւառում փոքրամասնութիւն: Կոնգրէսի անդամները սառնասիրտ մարդիկ են, պլատոնական վաւերագրերով չեն կարող բաւականանալ. անհրաժեշտ է մի գործնական միջոց ցոյց տալ: Կոնգրէսի գործը հեշտացնելով դուք ձեր դատի յաղթանակը հեշտացրած կը լինէք...»:

Պատուիրակութիւնը Ուադինգտընի այս վերջին դիտողութիւնն ընդունելով նրան ներկայացնում է ապագայ ինքնավար Հայաստանի կանխօրէն կազմուած աշխարհագրական քարտէսն, որի վրայ նշանակուած էր, թէ այն ո՛ր նահանգներն և գաւառներն էին հոծ հայաբնակ; որոնց համար ինքնօրինութիւն էր պահանջվում: Բայց Լիբանանի և Հայաստանի միմեանցից տարբեր վիճակ ունենալու մասին ֆրանս. մինիստրի կատարած նկատողութիւնն առանց հետևանքի է մնում:

Այնուհետև Խրիմեան և Չէրազ գնում են անգլիական դեսպանի մօտ, որ նրանց նոյնպէս մի լուրջ դիտողութիւն է անում. «Ես ձեր խնդրին ծանօթ եմ,—ասում է նա.—ապահով եմ, որ Լօնդօնում լաւ ընդունելութիւն կը գտնէք, եթէ չափաւոր լեզու գործածէք: Անկասկած՝ դիւրին է ոստիկանութիւնն և դատարանները բարեկարգել և հարկային սիստէմը կանոնաւորել, բայց խնդրի մի կէտը կասկածելի է երևում մեզ: Հայ տարրը դարերից ի վեր զուրկ է զէնք կրելու վարժութիւնից. կարո՞ղ է նա մի օրից միւսը զինուորական տարր դառնալ և զսպել այն վայրենի խումբերն, որոնք վխտում են ձեր երկ-

րում»։ Դրան իբրև պատասխան, Խրիմեան յիշեցնում է հայ բեռնակիրներին, որոնք, ասում է, եթէ զէնք ունենան, լաւ զի-նուորներ կարող են դառնալ»։ Դեսպանը ըստ երևոյթին գո-հանում է հայ համալների մասին տրուած վկայութեամբն և յորդորում է, որ հայ պատուիրակը շուտով Լօնդօն գնայ՝ լօրդ Սալզբըրիի հետ տեսնուելու, խոստանալով որ ինքն էլ իր կող-մից կը գրէ նրան։

Խրիմեան և իր թարգմանն ապրիլի 11-ին մեկնում են Պարիզից և երեկոյեան հասնում են Լօնդօն։

ՍԱՐՈՒԽԱՆ

(Կը շարունակուի)

---

# ՍԻՐԵՆԱԴ

(Ն. Մինսկիից)

Սև-սև ամպերը կտրում են կամար,
Խոնաւ է, խաւար, շուրջը տաղտկալի,
Լալով դողում է մերկացած անտառ,
Դու մի՛ արթնանար, ընկեր սիրելի,
Էլ մի՛ հալածիր երազդ պայծառ,
Աչքդ մի բանար այդքան վաղաժամ։
Երազ երջանիկ,
Երազ վաղանցիկ
Հիւր է մի անգամ։

Երանի՜ նրան, ով ցուրտ, թաց աշնան
Քնում է, տեսնում գարնան գրգուանք,
Ով բանտը ունի իրան օթևան,
Բայց երազում է անկաշկանդ մի կեանք։
Վա՜յ թէ արթնել էք… գիշերին դաժան.
Էլ չէ՛, չէք կարող նիրհել ոչ մի ժամ։
Երազ երջանիկ,
Երազ վաղանցիկ
Հիւր է մի անգամ։

Դ. ՆՈՐԵԿ

# ՂՐԻՄԻ ՀԱՅԵՐԸ*)

## IV

Դեռ նոր էին հաստատուել հայերը Կաֆայում, երբ թաթարների խանը, պաշարելով Սուդակի բերդը, ստիպեց գենովացիներին, որ վերջիններս տարեկան հարկը կանոնաւոր վճարեն, որովհետև հայերին իրանց թիկունք համարելով՝ գենովացիք երբեմն անկանոն, երբեմն էլ նոյն իսկ բոլորովին հարկ չէին վճարում։

Թաթարների հետզհետէ կազմակերպուելը, զօրեղանալը տեսնելով՝ հայերը, մանաւանդ վերոյիշեալ արշաւանքից յետոյ, հարկ են համարում մտածել և սեփական ապահովութեան մասին, որովհետև նրանք գտնվում էին Կաֆա քաղաքի պարիսպներից դուրս և հետևաբար թշնամին առանց մի նեղութեան պիտի կոտորէր նրանց։ Ուստի հայ մեծամեծները, գնալով հիւպատոսի մօտ, խնդրում են, որ իրանց թոյլ տայ նոր պարիսպ կառուցանել, հայկական թաղն էլ պաշտպանելու համար։ Հիւպատոսը համաձայնվում է։ Եւ ահա ծովածոցի հարաւային կողմից սկսած հայերը շինում են պարիսպ մինչև հիւսիսային ծովածոցը՝ Իսկէլէ-Կափու կոչուած քաղաքի դուռը։ Բացի այդ պարսպից՝ հայկական թաղում կառուցանում են մի նոր հայոց բերդ։ Այս պարիսպն ու բերդը շինում են կոփածոյ քարերից և ամեն մի 20, 40, 60 կանգուն հեռաւորութեան վրայ կառուցանում են գոթական ձևով աշտարակներ։ Անշուշտ ահագին ծախս էր պահանջում այդ ձեռնարկութիւնը։ Եւ հայերը գտանում են դրա հնարքը։ Ամեն մի անհատ պարտաւորվում է պարսպի մի որոշ մասի շինութիւնը և նրա նիւթի մատակարարութիւնը իր կարողութեան համեմատ վճարել, որից յետոյ այդ մասի վրայ պէտք է արձանագրուէր նրա անունը։ Եւ այդպիսի արձանագրութեան մասին տեղեկութիւն մենք գտնում ենք Յայսմաւուրքի նշանաւոր յիշատակարանում. «...ի ժամա-

*) «Արօր» № 9.

նակս պարսպաշինութեան Թէոդոսիա, կայր տէր-Մաղաքիա անուն աւագ-երէց մի՝ որ ընդ պապու եղբօր Թոռոյն իւրոյ Պետրոսի շինեցին զբերդն ի չափ ԵԾ կարտի, որոց զանուանս մինչեւ ցայսօր գրեալ կայ ի վերայ Սել ղաքուսոյն, յետկոյս սուրբ Լուսաւորչայ եկեղեցւոյն»*)։

Եւ այսպէս կարճ ժամանակամիջոցում քաղաքի պարիսպները կրկնակի երկարացան, իսկ Ֆրանկհիսարը քաղաքի մէջ դարձաւ միջնաբերդ, որից ոչ շատ հեռու բարձրանում էր իր վիթխարի պարիսպներով հայոց բերդը։

Այդ առաջին մեծագործութեան յաջորդում է երկրորդը՝ քաղաքի գլխաւոր ջրանցքի շինութիւնը։ Ֆ. դը լա Պրիմօդեն հաստատում է, որ Կաֆա քաղաքի գլխաւոր ջրանցքը շինել է տուել հայոց առաջնորդ-եպիսկոպոսը։

Հետաքրքրական է, թէ Ղրիմի շատ քաղաքներում գտնուող «հա կուզայ» աւերակ քարէ ջրանցքները հայերի ձեռակերտը չեն արդեօք։

Եւ այսպէս՝ հայերը հաստատուելով Կաֆայում և այլ քաղաքներում, նրանց առաջադիմութեան մեծ զարկ տալով՝ չմոռացան և իրանց անձնական ապահովութեան մասին մտածել։

Եւ, յիրաւի, ճիշտ ժամանակին էին շինուած Կաֆայում հայոց բերդն ու պարիսպները, որովհետև թաթարների ու գենովացիների յարաբերութիւնը երթալով վատանում էր, և մի թաթարի սպանութեան առիթով բորբոքուեց կրկին պատերազմ։ Թաթարների խան Ջանիբէկը, օգտուելով այդ առիթից, վիրաւորուած համարեց իրան և բաւարարութիւն պահանջեց գենովացիներից։ Իսկ սրանք ոչ միայն բաւարարութիւն չտուին խանի պահանջին, այլ նոյն իսկ չուզեցին որևէ բանակցութիւն ունենալ վերջինիս հետ։ Եւ խանը զայրացած՝ մեծ զօրքով արշաւեց Կաֆայի վրայ։ Սակայն անկարող եղաւ գենովացիների և հայերի միահամուռ զօրութիւնը խորտակել, այդ իսկ պատճառով իր բարկութիւնը թափեց Բալըխլուի վրայ։ Գենովացիք էլ խանին իրանց պատերազմական նաւերով ահագին վնասներ հասցրին ծովի կողմից, որից յետոյ վերջինս ստիպուեց ինքը հաշտութիւն խնդրել գենովացիներից։

Այդ աջող պատերազմից յետոյ հայերը ճոխանում ու հարստանում են և Ղրիմի նպաստաւոր դիրքից օգտուելով՝ մեծ առևտուր են սկսում եւրոպական երկիրների հետ, մանաւորապէս Իտալիայի և Լեհաստանի։ Եւ իրանց հարստութեան հե-

*) Հ. Մ. Բժշկեան. «Ճանապարհորդութիւն ի Լեհաստան», երես 340.

տեւում են մեծագործութիւնները, որի մասին այսպէս է խօսում նոյն յիշատակարանը. «Յայնժամ զօրացաք մեք և բազմացաք՝ և շինեցաք զգիւղս և զգաւառս, իշխանք և ազնուականք ի Ղարապազարէն սկսեալ մինչև ի Սուրխաթ և ի Ֆէօդօսիա, ի լերինս և ի դաշտս լի արարին վանօրէիւք և եկեղեցիօք մինչև ի Սուրխաթ: Եւ շինեցաք տունք հարիւր հազար, և զեկեղեցիս հազար, և ի ահէ հոնականաց պարսպեցին ի քաղաքն Ֆէօդօսիա»*):

Այսպէս ուրեմն հայերը շատանում են Ղրիմում այնքան, որ նրանց թիւը հաշւվում է մինչև 100,000 տուն (ուրեմն միջին թւով $^{1}/_{2}$ միլիօն հոգի). Նրանց ձեռքն է անցնում համարեա Կաֆայի վաճառականութիւնը: Եւ երբ փորձ է լինում լատին միսիօների կողմից հայերին կաթօլիկացնելու, և այդ միտքը իրականացնելու համար դիմում են կօնսուլին, սա բացարձակապէս մերժում է ցոյց տալ իր աջակցութիւնը և հետևեալ նշանակալից խօսքերն է ասում. «Scitis enim terram istam populatam esse in majore parte Armenis, qui sunt nobis fidelissimi et boni mercatores dantes civitati magnum beneficium». (Դուք պէտք է լաւ գիտենաք, որ այս երկիրը մեծ մասամբ բնակուած է հայերով, որոնք շատ հաւատարիմ մարդիկ են և պատուական վաճառականներ, որոնցից մեծ շահ ունի պետութիւնը)**):

Ինչպէս Յայսմաւուրքի յիշատակարանը վկայում է, անտառները և լեռները լի են արել հայերը վանքերով, որոնցից յայտնի են միայն մի քանիսը: Կանգուն մնացել և դարերի հարուածներին դիմացել է նշանաւոր ս. Խաչ վանքը, որը շինուել է անեցի գաղթականների ձեռքով XIV դարի կիսերին և որի սուրբ դարևանդի վրայ շինուած հողետներում «նստած բարեպաշտիկ աբեղաներ ամենայն խնամքով գրում էին և օրինակում հին աւետարաններ և ուրիշ եկեղեցական գրքեր»***): Այս վանքում եղել են շատ միաբան վարդապետներ իրանց առաջնորդ եպիսկոպոսի հետ միասին: Սրա ծուխն է եղել մի փոքր հեռու հովտում եղած երբեմն Կազարաթ աւանը: Մնացեալ վանքերի մասին կարելի է հետևեալն ասել: Եղել է ս. Խաչ վանքից մօտ 4 վերստ հեռաւորութեան վրայ ս. Ստեփաննոսի վանքը, որի մասին հետևեալ տողերն ենք կարդում հ. Մ. Բժշկեանի ճա-

*) Հ. Մ. Բժշկեան. «Ճանապարհորդութիւն ի Լեհաստան երես 338.
**) Կ. Եզեան. «Բունիմիութիւն Հայոց Լեհաստանի», ե. եւ ԺԳ—ԺԴ:
***) Յո. եպ. Ստեփանէ. «Ղրիմի ս. Խաչ վանքը»:

նապարհորդութեան մէջ. «Ս. Ստեփաննոս էր քարաշէն վանք, միով ժամաւ հեռի ի վերնոյն կառուցեալ ի գլուխ լերին ի մէջ մեծի անտառին, որ ունէր փոքրիկ եկեղեցի կանգնեալ ի վերայ չորից կամարաց, այլ այժմ քանդեալ կայ, միայն երևի վայր խորանին։ Ի մէջ տաճարին գոյ ջրհոր քառակուսի և խաչքար, իսկ աւերակքն ցուցանեն զհետս պարսպին վանաց, ուր կային 7 սենեակք. ունի պարտէզ և լուսաղբիւր. սակայն ամայի մնացեալ է այս տեղի վանաց։ Թուի թէ աստ գրեցաւ մեծ ճաշոցն 469 ամօք յառաջ ըստ որում դնի ի յիշատակարանի.—«Կատարեցաւ ի թուականիս հայոց ութ-հարիւր-հինգերորդի, յամսեանն օգոստոսի, որ օր ԻԲ ամսոյն ի հայրապետութեան Տեառն Մխիթարայ, յեպիսկոպոսութեան արհիականին տէր Ստեփաննոսի, և ի թագաւորութեան Կոստանդիանոսի ի քաղաքս Սուրղաթ ընդ հովանեաւ ս. Ստեփաննոսի Նախավկային մեծի 1356 թ.»*)։

Տողերիս գրողը թէև նոյն հռչակաւոր վանքին ս. Խաչ վանքի վանահայր այժմ հանգուցեալ Ն. եպիսկոպոս Նահապետեանի հետ այցելութեան է գնացել, բայց բացի սառնորակ մի աղբիւրից և քարակոյտից ուրիշ ոչինչ չէ նկատել այդ տեղում։

Բացի այդ՝ անտառի խորքում եղել է նաև մի կուսանաց վանք, որի աւերակները նոյնպէս երևում են։ Այժմ ս. Խաչ վանքից զատ կայ նաև ս. Փրկիչ վանքը Ղարասուբազարից 12 վերստ հեռաւորութեան վրայ։ Եղել են և ուրիշ շատ եկեղեցիներ ու վանքեր։ Միայն Կաֆան ունեցել է 45 եկեղեցի, որոնցից շէն ու պայծառ եղել են 24-ը, ինչպէս վկայում է «Քէֆէ քաղաք ծովահայեաց»-ի հեղինակը։

Անշուշտ հայերը Կաֆայի վաճառականութիւնը իրանց ձեռքն առնելուց ու Armenia marittima դարձնելուց յետոյ՝ պէտք է մասնակցէին թէ քաղաքի կառավարութեան և թէ նրա պաշտպանութեան գործերում։ Եւ ահա պատմական յիշատակարանը գալիս է ապացուցանելու այդ ևս։ Հինգ ազնուական տներ մեծ դեր են խաղացել Կաֆայի վարչական խնդիրներում և նրանց մի քանի ներկայացուցիչները պատասխանատու պաշտօններ վարել։ Այդ տոհմերն են՝ Պահլաւունիք, Մուղալենք, Դարիջանենք և Աղամալենք, որոնցից Մուղալեան Մարգարին գենովացոց Շիրին իշխանը յանձնել էր Կազարաթի պաշտպանութիւնը, ուր նա նստում էր պահապան գնդով։ Նրա անունով էլ թաթար լեզուով Կազարաթի գետը կոչուեցաւ Մուղալ-օղլն։

*) Հ. Մ. Բժշկեան. «Ճանապարհորդութիւն ի Լեհաստան», երես 328։

Դարիջանենց Յովսէփ իշխանը եղել է Կաֆայի առաջին նախարարը, իսկ Աղամալենց Մեսրոպը նշանակուած է եղել Կաֆայի չորրորդ գնդապետը։

Վերևն ասացինք, որ լատին միսիօներները ջանք էին գործ դնում հայերի մէջ լատինականութիւնը տարածելու։ Սկզբում նրանք գալով Ղրիմ մտադիր էին թաթարներին ճշմարիտ կրօն քարոզել, սակայն հանդիպելով նրանց կողմից մեծ մոլեռանդութեան՝ թողնում են այդ միտքը և սկսում քրիստոնէութիւն քարոզել քրիստոնեայ հայերին։ Որպէս զի այդ գործը աւելի աջողութեամբ առաջ տանել կարողանան, պապը հաստատում է Կաֆայում եպիսկոպոսական աթոռ 1318 թուին, որի առաջին գահակալը լինում է Հերմօնիմոս եպիսկոպոսը, և ամեն ջանք գործ է դնում, որ հայերը ընդունեն կաթօլիկութիւն։ Եւ երբ տեսնում է, որ նշանակուած առաջնորդը շատ էլ ուշադիր չէ այդ նպատակը իրագործելու և Ղրիմ երթալու փոխարէն մնում է Գենօվայում, սաստիկ վըշտացած յանդիմանութիւն է կարդում նրան։

Այդպիսի մի կոնդակ գրել է Եւգինէոս IV պապը 1446 թուի դեկտեմբերի 13-ին Կաֆայի նոր նշանակուած առաջնորդին, որը ինչ ինչ պատճառներով երկար ժամանակ յետաձգում էր իր երթը։ Պապը ասում է. «Ամենից աւելի քեզ յայտնի է, թէ որպիսի աշխատութիւն թափեցինք մենք կաթօլիկութիւն ընդունած հայերին իրանց հաւատի մէջ պահելու համար, որին կարողացանք հասնել ծախքերի միջոցով... Զպէտք է մոռանաս, որ քեզ հովիւ ենք նշանակել միմիայն նրա համար, որ խօսքով և գործով մեծ արդիւնք ցոյց տաս Կաֆային, մի քաղաքի, որ բոլոր քաղաքներից աւելի կարիք է զգում»։

Վերոյիշեալ տողերը ակնյայտնի ցոյց են տալիս, որ հայերի կրօնափոխութեան խնդրում մեծ դեր է խաղացել նաև փողը։ Յետագայում այդ պրօպագանդին մասնակցել են և կօնսուլները։ Օրինակ՝ Պուալօ Իմպերիալէ կօնսուլը ճնշումն գործ դնելով կաֆայեցի հայ հարուստների վրայ և սպառնալով նրանց՝ փոխել է տալիս եկեղեցական մի քանի ծէսերը։ Այդ կրօնափոխութիւնը լուսաւորչական մեծամասնութիւնը ընդունում է իբրև ազգուրացութիւն, մանաւանդ երբ կաթօլիկ հայերը աստիճանաբար նոր ծէսերին սովորելով և ազդուելով պատերներից՝ իրանց, հայ-լուսաւորչականներից զատելու համար, անուանում էին «ֆրանկ» (ինչպէս և ամեն տեղ)։ Եւ այդ հանգամանքը աւելի է խորացնում կրօնի պատճառով առաջացած ազգային բաժանող վիհը, որին անտարակոյս մեծապէս նպաս-

*տում է երկու կողմի տգէտ կղերականութիւնը, և որի ցաւալի արդիւնքը լինում է սոսկալի հակառակութիւն երկու հայ համայնքների միջև...*

*Բարեբախտաբար կաթօլիկ հայերի թիւը չնչին լինելով, մանաւանդ գենովացոց տիրապետութեան օրերին, առանձին ազդեցութիւն չէ գործում ամբողջ Ղրիմի հայերի առաջադիմութեան վրայ։*

V

*Հայերի բարեկեցիկ դրութիւնը Կաֆայում և այլ հայաբնակ քաղաքներում տեւեց մինչև գենովացիների անկումը (այսինքն մինչև 1475 թուականը)։ Մինչդեռ գենովական և հայկական գաղութները օրէ-ցօր զարգանալով աւելի ընդարձակում էին իրանց ազդեցութիւնը Ղրիմի մնացեալ քաղաքների վրայ ու մեծ առևտրական կապեր հաստատում Լեհաստանի, Ռուսաստանի, Իտալիայի և այլ եւրոպական երկիրների հետ, թաթարները՝ ազդուած գենովական և հայկական քաղաքակրթութեամբ՝ փոքր առ փոքր զարթնում են և սկսում կազմակերպուել։*

*XV դարի սկիզբներին Չինգիզ խանի յաջորդները միանգամայն կորցրել էին իրանց ազդեցութիւնը թաթար թափառական ցեղերի վրայ և ահ ու սարսափ ազդող Օրան-Թեմուրների ժառանգները դարձել էին մոզաների և ցեղապետների ձեռքին խաղալիք։ Վերջիններս սաստիկ դժգոհ էին գենովացիների հարևանութիւնից ու նրանց գոռոզութիւնից և ուզում էին անպատճառ դուրս վանել այդ եկուոր վաճառականներին Ղրիմից։ Նրանց համար հայերը վտանգաւոր չէին թւում, մանաւանդ որ շատ լաւ յարաբերութեան մէջ էին թաթարների հետ և առիթը պատահած դէպքում նրանց ցոյց էին տալիս իրանց յարգանքը։*

*Սակայն գենովացիներին հեռացնելու համար կարևոր էր կազմակերպուած ոյժ, բացի այդ՝ անհրաժեշտ էր խանի գահը կենտրոնացնել Թերակղզու ներսը և թոյլ ու անգործ խաների տեղ նստեցնել եռանդուն ու քաջ անձինք։*

*Եւ ահա տեղի ունեցած պալատական մի խռովութեան ժամանակ Չինգիզ խանի վերջին շառաւիղը՝ Բենդի-բէկը սպանվում է իր Ղրիմի Խան-սարայում և նրա տոհմն էլ կոտորվում։ Այդ խոշոր և մինչև այդ չտեսնուած կոտորածը ա-*

ուխթ է տալիս մեծ խռովութիւնների և արիւնահեղ ընդհարումների։ Բայց ժողովրդից մեծ յարգանք վայելող ծերերի ժողովը վերջ է տալիս այդ ազգամիջեան կռիւներին։ Նա ընտրում է Հաջի անունով մի պատանու՝ Թաթարների խան, և ժողովուրդն էլ յօժարակամ նրան հպատակվում։ Այդ առիթով կազմուած աւանդութիւնը պատմում է, թէ այդ պատանին Չինգիզի տոհմից է եղել և կոտորածի ժամանակ մի հովիւ՝ Գիրէյ անունով՝ փախցրել է պալատից։ Երբ ծերերի խորհուրդը փնտռում է իրան յարմար մի անձն, հովիւը պատանու ձեռքից բռնած ներս է մտնում և ներկայացնում է ծերերին։ Բոլորն էլ վերջինիս հաւանում են ու դարձնում Ղրիմի խան։ Հաջին էլ, իբրև երախտագիտութեան նշան, դառնալով խան, իր անուան կցում է Գիրէյ հովիւի անունը և կոչվում է Հաջի-Գիրէյ։

Այդպէս՝ 1448 թուից սկսում է Ղրիմում իշխել Գիրէյների տոհմը, մինչև որ ռուսաց պետութիւնը, օգտուելով խանութեան թուլութիւնից, վերացնում է նրանց իշխանութիւնը Ղրիմից ու թերակղզին միացնում Ռուսաստանին։

Հաջի-Գիրէյի առաջին գործն եղաւ՝ տեղափոխել իր գահը Սուրխաթից Բախչէսարայ, որպէս զի գենօվացիների իշխանութեան սահմաններից հեռու լինելով՝ ազատ լինի նաև նրանց յանկարծական յարձակումներից։ Ապա նա սկսեց կազմակերպել իր զօրքը, միացրեց և ենթարկեց իրան թաթար թափառական ցեղերը, որոնք Ղրիմի դաշտավայրերում խաշնարածութեամբ էին զբաղվում, զսպեց նաև ներքին խռովութիւնները, որոնք դեռ հանդստացած չէին, և ապա ձեռնարկեց կազմակերպուած զօրքով աշխարհակալութեան։

Առաջին անգամ արշաւեց Ղպչաղների Սէյիդ-Ահմէդ խանի վրայ, որին յաղթեց և բազմաթիւ գերիներով վերադարձաւ իր մայրաքաղաքը։ Երկրորդ արշաւանքը կատարեց Կաֆայի վրայ, որին պաշարելով ստիպեց գենօվացիներին հարկը աւելի կանոնաւոր վճարել։ Եւ գենօվացիները ստիպուած էին խոնարհուել թաթարական զօրութեան առաջ։ Կար և մի ուրիշ հանգամանք։ XV դարի երկրորդ քառորդից սկսած, մինչդեռ թաթարները կազմակերպվում և աշխարհակալական ձգտումների նշաններ էին ցոյց տալիս, գենօվացիք քանի գնում՝ աւելի ու աւելի էին կորցնում իրանց նշանակութիւնը։ Յաճախակի տեղի ունեցող ներքին խռովութիւնները կոնսուլների հակաժողովրդական գործողութիւնների դէմ, քաղցածութեան և անընդհատ պատերազմներում չարքաշ կեանքի պատճառով քաշած նեղութիւնները հասարակ ժողովրդին կատաղեցնում էին։ Նրանք

այլեւս չէին բողոքում, այլ ապստամբութիւն բարձրացնելով ստիպում էին իշխաններին հաց բաժանել կարօտեալներին և կատարել իրանց իրաւացի պահանջները։

Գենովական հասարակապետութիւնը շատ անգամ քննիչներ էր ուղարկում, բողոքներին արդարացի վճիռ տալու համար, սակայն ազնուականներն ու հարուստները դարձեալ շարունակում էին կեղեքել հասարակ ժողովրդին։ Այլեւս հասարակապետութիւնը իր Ղրիմի ընդարձակ կալուածներից ոչ մի շահ չէր ստանում, և այդ իսկ պատճառով նա վճռեց յանձնել Կաֆայի և միւս քաղաքների կառավարութիւնը Ս. Գէորգի բանկին։

Կաֆայի դէպի անկումն դիմած այդ միջոցին աւելացաւ մի այլ վտանգ, որը վերջնական հարուած տալով գենովացիների իշխանութեանը՝ դուրս վանեց նրանց Ղրիմից. դա թաթարների և օսմանցիների միացեալ յարձակումն էր Ղրիմի բոլոր գենովական կօլօնիաների վրայ։

Օսմանցիք 1453 թուին Մեհեմմեդ Բ. սուլթանի առաջնորդութեամբ տիրեցին Կ. Պոլսին։ Եւ մահմեդական օսմանցիների հարուածների տակ կործանուեց յունական կայսրութիւնը, որի վերջին կայսրը՝ Կոստանդին XII Պալէօլօգը հերոսաբար կռուելով ընկաւ՝ թիւրքերի Կ. Պոլսի պարիսպներին տիրած ժամանակ։ Տիրելով Կ. Պոլսին անշուշտ օսմանցիները հրամայող դեր էին խաղում և Սև ու Միջերկրական ծովերը միացնող Մարմարա ծովի և Բօսֆորի նեղուցում և այդ նեղուցով երթևեկող նաւերի վրայ։ Եւ որովհետև գլխաւորապէս գնում անցնում էին գենովացոց նաւերը, ուստի նրանք պէտք է ամենից շատ ենթարկուէին օսմանցիների քմահաճոյքներին, մանաւանդ Կ. Պոլսի առման ժամանակ գենովացիք յոյների հետ համահաւասար պաշտպանեցին քաղաքը, որովհետև Պերա և Ղալաթիա թաղերը բնակեցուած էին մեծ մասամբ գենովացիներով։

Դեռ որոշ ընդհարումներ տեղի չունեցած՝ գենովացիք, ապահովելու համար իրանց դիրքը և ազատ մուտք ունենալու Բօսֆորի նեղուցում, դիմեցին սուլթան Մեհեմմեդին, խնդրելով որ նա արգելք չհանդիսանայ Կաֆա դիմող նաւերին։ Սուլթանը խոստացաւ կատարել նրանց խնդիրը։ Բայց գենովացիք, տեսնելով միւս կողմից սուլթանի պատերազմական նոր պատրաստութիւնները և կասկածելով որ դրանք Ղրիմը գրաւելու դիտաւորութեամբ են կատարվում, երկու նաւ լիքը պատերազմական մթերքներով և զինուորներով ուղարկեցին Գենովայից Կաֆա։ Բայց գենովացոց իշխանութեան օրերը Ղրիմում հա-

մարուած էին։ Այն ընդհանուր յուզումը, որ տիրում էր կաֆայեցիների մէջ, գլխաւորապէս կառավարող շրջաններում, անտարակոյս յայտնի պիտի լինէր և թշնամական յարաբերութիւն ունեցող հարևան թաթարներին, որոնք առիթից օգտուելով՝ չնայած գենովացիներին հասցուած օգնութեան՝ պատերազմ յայտարարեցին և արշաւեցին Կաֆայի վրայ Մենգլի-Գիրէյի օրով՝ 1475 թուին։

Նեավիթայի Յայսմաւուրքի յիշատակարանը այսպէս է նկարագրում այդ դէպքը. «... Խանն էառ զդուստրն Շիրին իշխանին ի կնութիւն որդւոյ իւրոյ, և յետ խնամենալոյն հրաւիրեաց Շիրին իշխանին զփեսայն իւր ի յինքն. բայց կուսարկուք միախորհուրդ լեալք այնքան խառնակութիւնս արարին առ խանն ասելով թէ՝ Շիրինն զորդի քո կոչեաց ի խորհուրդ՝ հալածելով զքեզ, նստուցանել յաթոռ քո. և առ Շիրինն թէ՝ եկեալ է փեսայն քո առ քեզ, զի զքեզ հալածեալ կորուսցէ. և այլ բազում բանիւք. մինչ զի՝ պարոն Շիրինին հաւատացեալ ըմբռնեաց զփեսայն իւր ետ ի պահեստ լատին իշխանին։ Ընդ որս ոխացեալ խանն դեսպան առաքէ առ սուլթան Թուրքաց գալ ի յօգնութիւն. Ենթ պայմանիս այսորիկ՝ ասելով թէ քաղաքն ձեզ լիցի և զորդին իմ ինձ. իսկ Թուրքն Գճ (300) նաւօք ընդ ծովով և ինքն ընդ ցամաքիւ պաշարեցին զՖէօդոսիա։ Յայնժամ ընդդիմացան իշխանքն և ազնուականքն մեր և ոչ ետուն զքերդն։ Ապա Թուրքն ուխտ եդեալ ընդ հայոց չմեղանչել եթէ հնազանդեսցեն, այլ ազատութիւն տալ։ Տեսեալ իշխանաց մերոց և ազնուականաց զթուլութիւն իշխանին Ջինիվիզաց և զօրացն նոցին, մանաւանդ թէ իշխանն փախուստ էառ, անճար մնացեալ ի սովու, առին զերդումն և զքաղաքն ետուն Թուրքաց։ Զայս եղև ՋԻԴ (1475) թուին»*)։

Այսպէս է նկարագրում Յայսմաւուրքի նշանաւոր յիշատակարանի հեղինակը այդ եղելութեան պատճառը։ Սակայն օտար աղբիւրները դէպքը այլ կերպ են նկարագրում։ Ըստ օտար պատմաբանների՝ գենովացիները, գործ դնելով իրանց ազդեցութիւնը այն ժամանակուայ խանի՝ Մենգլի-Գիրէյի վրայ, զրկում են պաշտօնից իշխան Էմինեկ բէկին, որը իրանց սահմանակից գաւառի կառավարիչն էր, և նշանակել են տալիս այդ պաշտօնում թաթարներից առուած մէկին։ Էմինեկ բէկը չկարողանալով տանել այդ անպատուութիւնը՝ ապստամբում է խանի դէմ, մեծ զօրք է հաւաքում և արշաւում է Կաֆայի վրայ։ Նա-

*) Մ. Բժշկեան. «Ճանապարհորդութիւն ի Լեհաստան», երես 338.

խապէս նա խնդրում է սուլթան Մեհեմմեդ Բ.-ի աջակցութիւնը, որը պատրաստ մեծ նաւատորմիղով մտադրվում էր արշաւել Եւրոպայի ծովափնեայ քաղաքները։ Վերջինս իր պատրաստած 300 նաւերը Ղապիտան Կէտիկ փաշայի առաջնորդութեամբ ուղարկում է Կաֆայի ջրերը։

Կարծիք կայ նաև, որ սուլթանը վճռել էր վրէժխնդիր լինել գենովացիներին՝ նրանց Կ. Պոլսի առման ժամանակ յոյներին ցոյց տուած օգնութեան համար։

Մի կողմից (ցամաքից) Էմինեկ բէկը, միւս կողմից Կէտիկ փաշան պաշարում են Կաֆան և սաստիկ ռմբակոծում, աւերելով բազմաթիւ գեղեցիկ շինութիւններ և պալատներ։

Գենովացիներն ու հայերը, տեսնելով սոսկալի աւերմունքը և անզօր զգալով իրանց ընդդիմադրելու ցամաքից ու ծովից տեղացող սոսկալի կրակին, բանակցութիւն են սկսում Կէտիկ փաշայի հետ, և գենովացոց վերջին կօնսուլը՝ Անտօնիօ դե-լա-Գաբելլան և նրա խորհրդական Ումբէրտօ Սկվարչիաֆիօն մի քանի հայերի հետ միասին յանձնում են Կաֆան Ղապիտան-Կէտիկ փաշային։

Կարծիք կայ, որ դրանք կաշառուած պէտք է լինէին օսմանցիներից, որ թուլամորթութեամբ առանց երկար մտածելու յանձնեցին քաղաքը թիւրքերին։

Այսպէս թէ այնպէս՝ օսմանցիների յաղթական բանակը մուտք է գործում Կաֆա և զինաթափ անում բոլոր բերդականներին։ Ապա՝ ըստ թիւրքական սովորութեան՝ սկսվում է ընդհանուր կոտորած. կոտորում են գլխաւորապէս տղամարդկանց, կանանց գերում, իսկ երեխաներին՝ թւով 1500 հոգի՝ ուղարկում են Կ. Պոլիս՝ ենիչերի պարձնելու։ Ժողովրդի մի մասը նաւերով ճանապարհ են դնում Կ. Պոլիս և բնակեցնում Պերայում, որոնք և ժանտախտի ժամանակ համարեա բոլորը կոտորվում են։

Այսպէս՝ ութն օր է տևում բարդուղիմէոսեան կոտորածը. գիշերները՝ ռմբակոծութիւնից ազատ մնացած շինութիւնները այրելով հրավառութիւն էին սարքում...

Իններորդ օրը Ղապիտան Կէտիկ փաշան մտնում է քաղաք և սարքում մի չտեսնուած խնճոյք։ Այդ խնճոյքի մասին այսպէս է խօսում յիշատակարանը. «Յաւուր միում հաւատացեալ իշխանաց մերոց բանիցն փաշային և մանաւանդ անճար մնացեալ՝ ըստ հրամանի նորին գնացին առանց սրով ի ճաշ առ փաշայն. զի էր բնակութիւն նորա Իսկէլէ ղաբուսին ի վերայ չորրորդ դրատիկոնի պալատին։ Յետ ճաշելոյ նոցին ի յիջանելն ի ծիգ ձիգ

սատրճանին պալատին, դահիճքն՝ ըստ հրամանի փաշային՝ մի մի կոտորեալ արկին ի ծով։ Այսպէս իշխանազունք մեր և ազնիւք կատարեցան ի Քրիստոս»*)։ Ապա յիշատակարանը շարունակում է պատմել, թէ նոյնպիսի կոտորածներ թաթարներն ու օսմանցիք սարքել են Կազարաթում և Սուրխաթում, անխըտիր կոտորելով թէ ծերերին, թէ մանուկներին և թէ կանանց, այնպէս որ «զարիւնս նոցա յերկիր հեղեալ իբրև զվտակս գետոց ընթանայր ի փողոցսն»։

Ինչպէս արդէն ասացինք, գերի մանուկներին դարձրին ենիչերիներ, իսկ գերուածների մեծ մասը կոտորուեցին ժանտախտից, մնացեալները յարմար ժամանակ գտնելով՝ գաղթեցին Լեհաստան, որտեղի հայերը մեծ արտօնութիւններ էին վայելում լեհաց թագաւորներից։

Կ. Պոլիս գերի գնացողների մէջ կային նաև Անտօնիօ դը-լա-Գաբելան և Ումբերտօ Սկվարչիաֆիօն, որոնք իրանց դաւաճան գործողութիւնների համար արժանի պատիժն ստացան սուլթանից։ Առաջինին դարձրին նաւերի մէջ (գալերների) թիավար և սոսկալի տանջանքների ենթարկեցին, իսկ խորհրդական Սկվարչիաֆիօնին՝ կախեցին կզակից Ինչ վերաբերում է մնացած հայերին (քաղաքը յանձնող), նրանց, ինչպէս արդէն ասացինք, Կէտիկ փաշան ճաշկերոյթից յետոյ սպանել տուեց։

Կաֆայում, Սուրխաթում և Կազարաթում մնացած և կոտորածից փրկուած հայերը, տեսնելով իրանց անապահով դրութիւնը, խումբ խումբ սկսեցին ցրուել դէպի զանազան կողմեր, գլխաւորապէս Լեհաստան։ Երևի այդ կոտորածի ամենասաստիկ հարուածն հասել է Կազարաթին, որ վերջինս այդ դէպքից յետոյ միանգամայն քանդուել ու կորչել է։

Այդ մեծ հարուածից յետոյ երբէք հայութիւնը Ղրիմում այնքան չշատացաւ, որ հրամայող դեր խաղար քաղաքներում։ Ճիշտ է, ըստ Նեսվիթայի յիշատակարանի, XVII դարի սկիզբներին (1602 թուին) «ի յաւերելն Ջէլալին զերկիրն պարսից, բազումք ի յազգէ մերմէ չուեալ անտի գան ի Ղրիմ, ի Թէօդօսիա, ի Ղարապազար, ի Պաղչասարայ և ի Կեօզլով», սակայն այդ եկուորները թուով շատ քիչ են եղել և ցրուած ապրելով՝ մեծ ազդեցութիւն չեն ձեռք բերել քաղաքական կեանքում։ Վերոյիշեալ գաղթականութիւնը տեղի ունեցաւ հետևեալ պատճառների հիման վրայ։

*) Հ. Մ. Բժշկեան. «Ճանապարհորդութիւն ի Լեհաստան», երես 339—340.

Օսմանցիների և պարսիկների արշաւանքների ու ասպատակութիւնների պատճառով Հայաստանը քար ու քանդ էր լինում, երկիրը աւերվում, ու ամեն հակառակորդ բազմաթիւ գերիներ առած հեռանում արշաւանքի վայրից։ Մինչդեռ երկու զօրեղ տէրութիւններ—օսմանցիք ու պարսիկները—պատերազմում էին աշխարհակալական ձգտումներով, քիւրդ բէկերը օգտուելով ընդհանուր անտէրութիւնից՝ մեծամեծ փնասներ էին հասցնում տեղացի հայ ազգաբնակութեան։ Այդպիսի աւերածութիւններ ու բռնութիւններ գործ է դրել Ջէլալ անուն քիւրդ բէկը և դրանով նշանաւոր հանդիսացել։ Ահա այդ բէկի անտանելի լուծից ազատուելու համար, զրկանքների ենթարկուած հայերի մի մասը, որոնք ապրում էին Որոտն գաւառի Վանանդ քաղաքում, թողին իրանց երկիրը և եկան Ղրիմ 1602 թուին։ Սակայն յիշատակարանը չէ յիշում, թէ թուով որքան են եղել այդ նոր գաղթողները։

ՊԵՏՐՈՍ ԹՈՒՄԱՆԵԱՆ

(Կը շարունակուի)

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ

---

**Կաթողիկոսական հարցը.**—*Սուր պայքարը և մօտալուտ վախճանը.—Երևանի թեմի առաջնորդի և սինօդի եռանդուն գործունէութիւնը.—Կանդիդատների որոշումը.—Ռուսաստանի 6 թեմերի տրամադրութիւնը.—Թիւրքահայերի տրամադրութիւնը. — Էջմիածնական-հօրիզօնական խլուրդային ցուցակը և հետևանքները.—Ներքին գործերի մինիստրութեան անակնկալ միջամտութիւնը.—Հայոց պատրիարքարանի և սինօդի միջնորդութիւնները.—Մինիստրական կարգադրութեան փոփոխութիւնը.—Թիւրքահայոց երեսփոխանական ժողովի որոշումները.—Եզրակացութիւն։*

**Պատրիարքական հարցը.**—*Տեղապահ Մանկունու պաշտօնավարութիւնը.—Պատրիարքական ընտրելիներ.—Նոր պատրիարքի ընտրութիւնը.—Արշարունի եպիսկոպոսի կենսագրութիւնը.—Երուսաղէմի պատրիարքի ընտրութեան հարցը.—Հաւանական ընտրելին։*

**Ամերիկահայերի եկեղեցական անջատողական ձգտումները։**

**Թիֆլիսի հայ վաճառականների եւ «Հօրիզօնի» միջադէպը.**—*«Հօրիզօնի» կատաղի արշաւանքը վաճառականների դէմ և նրանց պատասխանը։*

I

## ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ՀԱՐՑ

*Կաթողիկոսական հարցը, որի լուծումը մօտեցել է իր վախճանին, հոկտեմբեր և նոյեմբեր ամիսների ընթացքում ստացաւ սուր բնաւորութիւն և պայքարը սաստկացաւ։ Այդ պայքարի հետևանքն այն եղաւ, որ Ռուսաստանի 6 հայ թեմերից 4-ը—այն է՝ Ղարաբաղի, Շամախու, Թիֆլիսի և Բեսարաբիայի—ձայն տուին ջախջախիչ մեծամասնութեամբ յօգուտ Մաղաքիա արքեպիսկոպոս Օրմանեանի ընտրելիութեան, ընտրելով պատգամաւորներ այնպիսի անձանց, որոնք յայտնի են իբրև անպայման կողմնակիցներ նախկին պատրիարքի. իսկ մնացած 2 թեմերը—Աստրականի և Երևանի—իրանց հակառակ յայտաբարեցին Օրմանեանի ընտրելիութեան, թէև կանգ չառան մի որոշ կանդիդատի վրայ, այլ տուին մի քանի անուններ՝ Դուրեան, Սուրէնեան, Մեսրոպ և Մուրադբէգեան։ Երևանի թեմի*

պատգամաւորի ընտրութեան ժամանակ յայտնուեց նոյնպէս, որ Ալէքսանդրոպոլի յաջորդութիւնը, որ ունի մօտ 140,000 հայ բնակիչ, ընտրել է Օրմանեանի կանդիդատութեան կողմնակից պատուիրակներ։ Եթէ ի նկատի ունենանք, որ՝ 1) Ռուսաստանում մօտ 1,200,000 է հայերի թիւը, 2) Երևանի թեմում հայերի թիւը համարվում է մօտ 450,000 (և ոչ 800,000, ինչպէս չափազանցած ձևով յայտնեց «Հօրիզոնը»), 3) Ալէքսանդրոպոլի յաջորդութեան 150,000 թիւը հանենք այդ 450,000-ից, ուրեմն պէտք է ընդունել, որ Օրմանեան արքեպիսկոպոսի ընտրելիութեան կողմնակից է Ռուսաստանի հայ ժողովրդի գրեթէ 2/3-ական մասը, այն է՝ առ նուազն 700,000 ժողովուրդ, մինչ մնացորդ մօտ 500,000-ը բաժանուած է երկու կամ երեք կանդիդատների (Դուրեան, Սուրէնեան և Մուրադբէգեան) մէջ։ Փաստերի, սառն թուանշանների առաջ ոչ մի բան կանգ առնել չէ կարող։ Չպէտք է մոռանանք և մի կարևոր հանգամանք, այն, որ Երևանի թեմի պատուիրակների ընտրութիւնը կատարուեց բացառիկ և ընտրողների համոզմունքն ու խիղճը կաշկանդող պայմանների մէջ։ Շնորհիւ այն հանգամանքի, որ կոյր բախտի բերմամբ այդ թեմի առաջնորդական փոխանորդ է հանդիսանում մի անձն, որ ամբողջովին համակուած է նեղ կուսակցական, թայֆայական ձգտումներով, որի փառասիրութիւնը հասել է այն աստիճան ինքնակուրացման և այնքան հսկայական անհամեստութեան, որ Ներսիսեան դպրոցի երէկուայ վերակացուին, անգլիացի վաճառական Վէյսից նոյն իսկ գործակատարութեան համար անընդունակ ճանաչուած երիտասարդին (որ շնորհիւ թայֆայական ինտրիգների կարողացաւ հայոց եկեղեցու նուիրապետութեան մէջ գրեթէ անօրինակ ամենակարճ ժամանակում վարդապետութիւնից եպիսկոպոս դառնալ, և դա՝ հանգուցեալ Իզմիրլեանի խոշոր սխալներից մին եղաւ), երազել է տալիս բազմել նոյն իսկ Լուսաւորչի Գահի վրայ, որ դրդում է նրան մրցակից հանդիսանալ նոյն իսկ Սուրէնեան արքեպիսկոպոսին, որի համար որպէս թէ նա աշխատում էր առ երեսս, պատուիրակների ընտրութիւնը կատարուեց իր՝ այդ փառամոլ փոխանորդի մղած ագիտացիայով և որոշ հրահանգներով գործակալներին, որպիսի ագիտացիայի հետևանքն այն եղաւ, որ պատուիրակներ ընտրուեցին Երևանի կոնսիստորիայի գրագիրներ, ծառայողներ և թեմում նրանից հրաւիրուած ուսուցիչներ։ Փոխանորդի անզուսպ փառամոլութիւնը պատկերացաւ և այն բանի մէջ, որ նա ձգտեց նոյն իսկ կաթողիկոսական շուք տալ իրան, ստեղծելով առանձին «առաջ-

նորդական դիւան», որովհետև եթէ ամենայն հայոց կաթողիկոսն ունի «դիւան կաթողիկոսի ամենայն հայոց», ինչու Երևանի փոխ-առաջնորդը, որ երազում է շուտով լինել նրա յաջորդը, չունենայ «դիւան առաջնորդի թեմին հայոց Երևանի»: Խորէն Մուրադբէգեան եպիսկոպոսը, երբ դեռ սոսկ վարդապետ էր, երբ դեռ սոսկ գործակալ էր Նոր-Բայազէտում, ստորագրում էր «առաջնորդական փոխանորդ Նոր-Բայազէտի վիճակին»: Նա ինքն և նրա արբանեակները, որոնք հրատարակում էին նրան արժանաւոր յաջորդ Լուսաւորչի գահի, անշուշտ այն համոզմունքն ունէին—և կարի գեհիկ համոզումն—թէ լաւ պրիստաւը, լաւ և իր պաշտօնի մէջ արի գաւառապետը կը լինի և լաւ ու արժանաւոր մինիստր-նախագահ:

Ահա այդ փոխ-առաջնորդը ամեն հնար գործ դրեց, որպէս զի իրան անհամակիր անձերին զրկի պատուիրակութեան պաշտօնից, ինչպէս նա զրկեց Մանուկ Աբեղեանին, հրատարակելով նրա ընտրութիւնը ապօրէն: Եւ Էջմիածնի սինօդը ամեն կերպ օգնում էր Մուրադբէգեան եպիսկոպոսին, որ, սակայն, չը կարողացաւ Ալէքսանդրոպօլի վիճակում ընտրել տալ իր ուզած անձանց, և այդ ընդարձակ վիճակը յայտարարեց իրան Օրմանեանի ընտրելիութեան ջատագով:

Նշանաւոր է և Էջմիածնի սինօդի գործունէութիւնը կաթողիկոսական հարցում: Սինօդը իր նախագահով, որ կաթողիկոսական թեկնածու է, չկարողացաւ կանգնել իր կոչման բարձրութեան վրայ և ցոյց տուեց աչառու, կուսակցական վերաբերմունք, արեց մի շարք իրար հակասող կարգադրութիւններ, իսկ նրա նախագահը ուղղակի միջամտեց ընտրական գործերին, ուղարկելով Կ. Պոլիս և Թիւրքահայ առաջնորդներին ցուցակներ, հրահանգներ՝ պատգամաւոր ընտրելու այս և այն անձին, արդէն ընտրուածին հեռացնելու և տեղը ուրիշին ընտրելու և այլն: Այսպիսի բազում փաստեր արձանագրուած են Կ. Պոլսի և Թիֆլիսի հայ մամուլի մէջ: Մի խօսքով՝ թէ սինօդի և թէ նրա նախագահի ձգտումը կաթողիկոսական ընտրութեան հարցում ուղղուած էր դէպի նպատակը՝ խափանել Օրմանեանի կուսակից պատուիրակի կամ պատգամաւորի ընտրութիւնը և աջողեցնել Սուրէնեանի կուսակիցների ընտրութիւնը, ինչպէս և զուգընթացաբար Դուրեանի, Մուրադբէգեանի կամ Մեսրոպի ընտրութիւնը: Սինօդը, առաջուց իմանալով որ բողոքներ կարող են լինել, որոշում է և յայտարարում է, որ պատուիրակների ընտրութեան հաստատութիւնը կամ բեկումը անդառնալի կերպով պատկանում է առաջնորդին. և երբ Մուրադբէգեան

եպիսկոպոսը բեկում է իր թեկնածութեան հակառակորդ Մ. Աբեղեանի պատուիրակային ընտրութիւնը և սա բողոքում է, սինոդը, հիմնուելով իր որոշման վրայ, թողնում է Աբեղեանի բողոքը անհետեւանք։ Սակայն պատահում է, որ Մոսկվայում պատուիրակ է ընտրվում բժ. Ս. Շահ-Նազարեան, հակասուրէնեանական. Նրա ընտրութեան դէմ բողոք է բառնում Ս. Մամիկոնեանը մի խումբ անձանց հետ. առաջնորդ Ներսէս արքեպիսկոպոսը թողնում է բողոքը անհետեւանք։ Ըստ սինոդի որոշման՝ առաջնորդի վճիռը պէտք է լինէր անբողոքելի և անդառնալի, բայց սինոդը այս անգամ բեկում է Շահ-Նազարեանի ընտրութիւնը և հրամայում կատարել նոր ընտրութիւն, և նոր ընտրութեամբ պատուիրակ է ընտրվում Ս. Մամիկոնեանը։ Ինչպէս տեսնում էք, միևնոյն դէպքի համար՝ երկու չափ։

Սինոդը և նրա նախագահն այնքան մեծ փութկոտութիւն են ցոյց տալիս հակա-օրմանեանական պատուիրակների աջողութեան համար, որ անում են ոչ միայն ապօրինի, այլ և ծիծաղելի կարգադրութիւններ։ Էջմիածնական-հօրիզոնական խլուրդային ցուցակի մէջ—որի մասին խօսել ենք անցեալ անգամ—նշանակուած է եղել և Վրթանէս Փափազեանը, քամէլէոնութեան այս տիպիկ ներկայացուցիչը։ Մանկունու յանձնարարութեամբ, նա ընտրվում է պատգամաւոր Շաբին-Գարահիսարի վիճակից. բայց արի տես, որ այդ խեղճ վիճակը փարա անգամ չունի վճարելու Վրթանէս Փափազեանի ճանապարհածախքը, թէև դա մեծ բան չէ, որովհետև Փափազեանը գտնվում է Շուշում։ Սակայն Վ. Փափազեանը, որ նոյնպէս այն բարի-պտուղներից չէ, որոնք կամենան «առանց փարայի քայլ մը ընել», դիմում է սինոդին և նրա նախագահին ու ասում. «Տուէք ինձ ճանապարհածախս, որպէս զի գամ Էջմիածին»։ Սինոդը եթէ կամենար օրինաւորութեան սահմանի մէջ մնալ, պէտք է պատասխանէր. «Պարոն, դուք պատգամաւոր էք Շաբին-Գարահիսարի. դիմեցէք այդ թեմին և նրանից պահանջեցէք ձեր ծախքը. դա մեր գործը չէ»։ Բայց նա կարգադրում է, որ Շուշու թեմը վճարի Թիւրքիայի Շաբին-Գարահիսարի պատգամաւորի ճանապարհածախքը։ Եւ անշուշտ Վ. Փափազեանը, որ գիտէ օգտուել ամէն պարագայից և դէպքից, ուրախութեամբ կը ստանայ իր ճանապարհածախսը Շուշու թեմի գանձարանից և կը շտապէ գնալ Էջմիածին ու իր ձայնը տալ Սուրէնեանին, որ դիւրացրեց, ի հաշիւ անմեղ Շուշու թեմի, իր ուղևորութիւնը...։

Երկար կը լինէր առաջ բերել սինոդի և նրա նախագահի ոտնձգութիւնները և անտեղի միջամտութիւնները կաթող. ընտ-

բութեան հարցում։ «Զորն պատմեմ, կամ զորն խոստովանիմ, զի անթիւ են յանցանք իմ»—կարող էր ասել սինօդը, որ, երևի, կը կամենայ մեզ բացատրել, թէ որ աշխարհի լօգիկայի հիման վրայ Շաբին-Գարահիսարի պատգամաւորի ծախքը պ՛տք է հոգայ Շուշու թեմը։

Բայց անցնենք ընտրութիւններին։

Պատգամաւորական ընտրութիւնները ցոյց տուին, որ Ռուսաստանի 6 թեմերից 4-ը—այն է՝ Շամախու, Ղարաբաղի, Թիֆլիսի և Բեսարաբիայի—անպայման կուսակից են Օրմանեանի ընտրելիութեան, ինչպէս վերևում՝ թուանշաններով ես ցոյց տուինք, հետևաբար ռուսահայերի մեծամասնութեան տրամադրութիւնը յօգուտ Օրմանեանի է։ Պարզուեց և մի հանգամանք. Օրմանեանի ընտրելիութեան կուսակից են ոչ թէ միայն հայ պահպանողականները, այլ և հայ բարձր ինտելիգենցիայի (բժիշկներ, փաստաբաններ, գրողներ, գիտնականներ, ուսուցիչներ) մեծամասնութիւնը, ամբողջ առևտրա-արդիւնաբերական-ֆինանսական դասակարգը, արհեստաւորների դասակարգը։ Եւ դա շատ հասկանալի երևոյթ է։ Պէտք է ասել, որ Օրմանեանի ընտրելիութեանը փաստող եղաւ հէնց սկզբում ինքը կղերական պահպանողական բանակը, ի դէմս «Հովիտ» թերթի, որովհետև «Հովիտի» պաշտպանութիւնը կարծեցնել տուեց, թէ Օրմանեան, արդարև, կղերամիտ և հակաժողովրդապետական ձգտումներով օժտուած անձն է։ Սակայն երբ «Մշակը» լայն կերպով բացեց իր էջերը կաթողիկոսական ընտրելիների թեր և դէմ քննադատութեան առաջ, երբ ամբողջ մի տարի լոյս տեսան բազմաթիւ յօդուածներ թէ «Մշակի» և թէ այլ թերթերի մէջ, հրատարակուեցին գրքոյկներ, բրօշիւրներ՝ ջատագովական, պարսաւողական, քննադատական թէ Օրմանեանի և թէ կաթողիկոսական այլ կանդիդատների մասին, ահա կարծիքների այդ ընդհարումից ժայթքեց ճշմարտութիւնը. և մանաւանդ երբ զանազան անձինք այցելեցին Կ. Պօլիս և որոնումներ կատարեցին այդտեղի հայ եկեղեցականութեան մէջ, համեմատութիւններ արին, պարզուեց վերջապէս այն հանգամանքը, որ 1) հայ արդի եկեղեցականութեան մէջ չկայ Օրմանեանից բացի արժանաւոր, կարող, հմուտ և ձեռնհաս անձն կաթողիկոսական պաշտօնի համար իր կրթութեամբ, փորձառութեամբ, վարչական, դիւանագիտական յատկութիւններով. 2) Օրմանեան միայն կարող և ձեռնհաս է բարձրացնել Էջմիածնի Աթոռի վայր ընկած համայքը, պրեստիժը, մտցնել հայ հոգևորականութեան մէջ կարգապահութիւն, ուղղել այդ հոգևո-

բականութեան գործունէութիւնը դէպի եկեղեցու և ժողովրդի օգուտը, շինարարութիւնը. 3) Օրմանեանի դէմ ստեղծուած թշնամական հոսանքը և նրա վրայ բարդուած ամբաստանութիւններն ու զրպարտութիւնները արհեստական են և արդիւնք մի կողմից «Դաշնակցութիւն» կոչուած կուսակցութեան ագիտացիայի (որովհետև այդ կուսակցութիւնը նրա մէջ նկատում է մի մեծ խոչընդոտ իր գործունէութեան առաջ, մինչ միւս ընտրելիների վրայ նայում է իբրև թոյլ և տկար կամքերի վրայ, որոնք կարող կը լինեն գործիք դառնալ իր ձեռքում կամ որոնք, յամենայն դէպս, բուռն դիմադրութիւն չեն ցոյց տայ), միւս կողմից սադրիմական գողերի և զեղծարարների ու Օրմանեանի անձնական թշնամիների պրօպագանդայի։ Այդ անմաքուր ագիտացիան ու պրօպագանդան տարուել և տարւում են այնքան ստոր ու զզուելի եղանակով, որ փոքր ի շատէ մաքրասէր մարդիկ, վախենալով որ ցեխն իրանց ևս կպչի, աւելի լաւ են համարել մեկուսի մնալ, թողնել Օրմանեանին միայնակ, անպաշտպան, քան դուրս գալ նրան պաշտպանելու, թէև իրանց սրտի և հոգու խորքում միանգամայն համոզուած են նրա անմեղութեան, նրա արժանաւորութեան մէջ։ Եւ դաշնակցական-սադրիմական-խուժանապետական անմաքուր ագիտացիայի ու տէրրօրի ներքոյ ստեղծուել է մի կօշմար, մի մղձաւանջ, որ նոյն իսկ այժմ, երբ Դաշնակցութեան համայքը ընկել և նրա ինչ բարի-պտուղ լինելը հասկացուել է Թիւրքիայի հայերի կողմից և ստեղծուել է զօրեղ հոսանք ժողովրդի մէջ նրա դէմ, այդ մղձաւանջը դեռ տիրում է մտքերի վրայ և նոյն իսկ Կ. Պօլսի ազգային երեսփոխանական ժողովը դեռ չէ կարողանում ազատուել նրանից։

Եւ երբ այդ ամենը պարզուեց, ռուսահայերի՝ թէ ժողովրդի և թէ ինտելիգենցիայի՝ մեծամասութեան համակրութիւնը և տրամադրութիւնը դարձան դէպի Օրմանեան արքեպիսկոպոսը, և նա դարձաւ Ռուսիայի հայութեան առաջին ցանկալի ընտրելին։ Այդ տրամադրութիւնը և համակրութիւնը ամենազօրեղ կերպով արտայայտուեցին Թիֆլիսի թեմի պատուիրակների և պատգամաւորի ընտրութեան մէջ, երբ իբրև պատուիրակներ անցան հայ հասարակութեան լաւագոյն ներկայացուցիչներ։ Սակայն Թիֆլիսի թեմի ընտրական պայքարը նշանակալից և պատմական դէպք եղաւ մի ուրիշ հանգամանքով ևս։ Հայ ինտելիգենցիայի ողջամիտ մասը, որին յարեց և Թիֆլիսի վաճառականութիւնը, ասպարէզ եկաւ՝ խարանելու մի հոսանք, որ վերջին տարիները կազմուել է մեր մէջ և որի արտայայ-

տիչ հանդիսանում է «Հորիզոն» թերթը իր արբանեակներով։ Այդ հոսանքը՝ դիմակաւորեալ կեղծիքն է, քամելէոնութիւնը, առ երեսս գառն՝ բայց ի ներքուստ գիշատիչ գայլ հանդիսանալը. մի հոսանք, որի նորընծաներին բնորոշելու համար ասում են՝ «նա հորիզոնական է», այսինքն նա հետեւող է մի ուղղութեան, որ այն չէ, ինչ ձեւացնում է իրան կամ ցոյց է տալիս, այն չէ ի ներքուստ, ինչ քարոզում է արտաքուստ, որ մոլորեցնում է հասարակական կարծիքը։ Այդ ուղղութեան խարանումը առիթ եղաւ մի սուր միջադէպի «Հորիզոն» թերթի և վաճառականութեան միջև, որի մասին կը խօսենք յետոյ։

***

Գալով Թիւրքահայերի տրամադրութեանը և հասարակական կարծիքին կաթողիկոսական հարցի վերաբերմամբ, պէտք է ասել, որ Թիւրքահայերը բաւական անտարբերութիւն ցոյց տուին մինչև վերջին րոպէները։ Չունենալով իրանց մէջ Օրմանեանից բացի մի այլ արժանաւոր անձն կաթողիկոսութեան համար և անհնարին տեսնելով Օրմանեանի կաթողիկոսացումը վերոյիշեալ պատճառներով, Թիւրքահայերը այն եզրակացութեան էին եկել, թէ այս անգամ ռուսահայերին պէտք է թողնել իրանց եկեղեցականների միջից մէկին ընտրել կաթողիկոս։ Եւ տեղապահ Մանկունի արքեպիսկոպոսը, որի շնորհիւ եպիսկոպոսական կոչումն է ընդունել Գէորգ Դ. կաթողիկոսից Սուրէնեան Գէորգ արքեպիսկոպոսը, որոշում է օգտուել այդ տրամադրութիւնից և կաթողիկոսական Գահը բարձրացնել իր նախկին պաշտպանեալին, մանաւանդ որ իրան հարկաւոր էր վրէժ լուծել Օրմանեանից, որ իր պատրիարքութեան օրով անյայտութեան մէջ էր թողել ռուսահայերի մէջ լաւ համբաւ չվայելող այդ եպիսկոպոսին։ Եւ ահա սկսվում է մի եռանդուն գրագրութիւն Մանկունու և Էջմիածնի միջև, և այդ գրագրութեան արդիւնքը լինում է էջմիածնական-հորիզոնական խլուրդային ցուցակը, որի մէջ իբրև Թիւրքիայի թեմերից ընտրելի պատգամաւորներ մտցուած էին «համբաւաւոր և նշանաւոր» անձինք, ամենքն էլ Թայֆայականութեան պատկանող, բացի մի քանի անձնաւորութիւններից։ Այդ ցուցակը, որ մի տեսակ անրապրոյականացումն, դիմօրալիզացիա մտցրեց ընտրական գործի մէջ, մեր կարծիքով՝ աղէտալի պէտք է լինի հայոց եկեղեցու ապագայի համար, որովհետև նա կեղծում է ընտրողական սկզբունքը և կարող է բանալ դուռ շատ և շատ անպատեհութիւնների, որ այժմ գուշակել չենք կարող։ Եւ մինչ

*Մանկունին իր արբանեակներով աշխատում էր թելադրել թեմերին իր այդ «համբաւաւոր ընտրելիները», յանկարծ բոլորովին մի անակնկալ դէպք եկաւ ժամանակաւորապէս կասեցնելու նրան իր թելադրումներից։ Ռուսաց ներքին գործերի մինիստրութիւնը ուղարկեց Էջմիածնի սինոդի պրոկուրորին մի բացատրական գրութիւն, բաղկացած 7 կէտերից, որի հիման վրայ արգելվում էր թեմերին պատգամաւոր ընտրել այնպիսի անձանց, որոնք չեն պատկանում թեմին, այսինքն թեմի ծխական չեն։ Մինիստրի այդ կարգադրութիւնը—որ թէև հայոց եկեղեցու ընտրական իրաւունքի սահմանափակումն էր, բայց, իրողապէս, ոչ մի վնաս չէր հասցնում եկեղեցուն, քանի որ նա ոչ թէ զրկում էր թեմի ժողովրդին իր եկեղեցու պետի ընտրութեանը մասնակցելու իրաւունքից, այլ տրամադրում էր միայն, որ այդ ժողովուրդը մասնակցի ընտրութեանն անմիջապէս, իր սեպհական ներկայացուցչի միջոցով—ամենից շատ յուզմունք և զայրոյթ պատճառեց խլուրդային ցուցակի հեղինակներին և մանաւանդ դաշնակցականներին։ Եւ ահա «Ազատամարտ» թերթը, որ երբ աշխարհիս ամեն մի ծայրում, ամեն մի անկիւնում Դաշնակցութեան համար որևէ մի անաջող, ձախորդ բան է անցնում, կամ, օրինակ, Ամերիկայում մի դաշնակցական ոճրագործ բանտարկվում է, այդ ամենի պատճառը համարում է Օրմանեանին, Հ. Առաքելեանին և իր բոլոր դժբախտութիւնները կամ դիտաւորութիւնների վիժումը վերագրում է նրանց, սկսեց թմբկահարել, թէ Օրմանեան, Հ. Առաքելեան, Թիֆլիսի վաճառականներն են մեղաւոր, որ ռուսաց կառավարութիւնը այդպիսի կարգադրութիւն է արել։ Եւ սակայն շատ շուտով պարզուեց, որ այդ ամբաստանութիւնը, զրպարտութիւնն ևս նոյնքան անբարեխիղճ են, հնարովի, որքան նախկինները։ Յայտնուեց, որ մինիստրութեան այդ կարգադրութիւնը հետևանք է բացառապէս Էջմիածնի սինոդի պրոկուրորի յարուցած մի հարցի, գիտութեամբ և խորհրդակցութեամբ սինոդի անդամների, դեռ յունիսի սկզբին։ Պրոկուրորը կամեցել է պարզել իր համար հետևեալ հարցը, որ նախորդ ընտրութիւնների ժամանակ ևս վէճի առարկայ էր դարձել և դեռ չէր լուծուել. արդեօք մի պատգամաւոր կարօ՞ղ է երկու կամ աւելի ձայն ունենալ։ Պրոկուրորը այդ հարցով դիմում է մինիստրին սեպտեմբերի 14-ի գրութեամբ և մինիստրութիւնը հոկտեմբերի 7-ի գրութեամբ պատասխանելով՝ իր կողմից տալիս է և անում ուրիշ բացատրութիւններ ու կարգադրութիւններ։ Հետևաբար՝ ոչ Օրմանեան, ոչ Առաքելեան,*

ոչ Քիշմիշեան, ոչ Միլեան որևէ տեղեկութիւն կամ մասնակցութիւն այդ խնդրին չէին կարող ունենալ և չեն ունեցել. և դրա մի ուրիշ փառաւոր ապացոյցն ևս այն է, որ Կ. Պոլսի դեսպան Չարիկօվը, որի միջոցով որպէս թէ Օրմանեանը պէտք է այդ դաւը սարքած լինէր, ոչ մի տեղեկութիւն և հասկացողութիւն այդ հարցի մասին չէ ունեցել։ Ստանալով մինիստրութեան այդ կարգադրութիւնը հոկտեմբերի կիսին, Էջմիածնի սինօդը հազիւ հոկտեմբերի 26-ին միջնորդութիւն է յարուցում Փոխարքայի միջոցով մինիստրութեան առաջ՝ փոխելու այդ կարգադրութիւնը, միևնոյն ժամանակ առաջարկում է Կ. Պոլսի պատրիարքարանին՝ դիմել նոյն միջնորդութեամբ Կ. Պոլսի ռուսաց դեսպանին, որ և սիրով ընդունելով այդ միջնորդութիւնը՝ միացնում է իր ջանքերը Փոխարքայի ջանքերին, և մինիստրութիւնը փոխում է իր կարգադրութիւնը։ Դրանից յետոյ այլ ևս ոչ մի արգելք չկար, որ Թիւրքահայերը ընտրէին իրանց պատգամաւորներին թէ իրանց միջից և թէ դրսից։

Սակայն Թիւրքահայերը այժմ հանդէս են գալիս՝ մասնակցելու ամենայն հայոց կաթողիկոսի ընտրութեանը ոչ թէ իբրև ազատ, անկախ քաղաքացիներ, այլ կաշկանդուած, այլ դրուած՝ իրանց խղճի հակառակ գործելու պայմանների մէջ, այլ զինաւորուած դիտաւորութեամբ խեղդելու, ճնշելու ռուսահայերի ձայնը և չյարգելու նրանց ցանկութիւնը։ Այդպիսի մի անընական դրութիւն ստեղծել է Թիւրքահայոց ազգային երեսփոխանական ժողովի՝ հոկտեմբերի 14-ի նիստում ընդունած՝ հետևեալ բանաձևը, այն ևս 24 ձայնով, ընդդէմ 21-ի, որպիսի բանաձևը տրուած է իբրև հրահանգ պատգամաւոր պ. Զիֆթէ-Սարաֆին։

«Ազգ. ժողովը, յետ երկար և հասուն խորհրդակցութեանց, կորոշէ ազատ թողուլ իր պատգամաւորը յառաջիկայ կաթողիկոսական ընտրութեան մէջ։ Սակայն միւս կողմէ ազգ. ժողովը բարոյական պարտականութեան տակ կը դնէ ինչպէս իր պատգամաւորը, նոյնպէս բոլոր Թիւրքահայ պատգամաւորները՝ բացարձակապէս քուէ չտալ այն եկեղեցականներուն, որոնք կամ ամբաստանութեան տակ են և կամ ընդհանուր համակրանք գրաւած չեն ազգի մէջ»։

Պէտք է ասել, որ այս բանաձևը դաշնակցական փոքրամասնութեան առաջարկածն է. օգտուելով այն հանգամանքից, որ մօտ 74 երեսփոխաններից շատերը հեռացել էին և մնացել միայն 59 հոգի, դաշնակցականները, որոնց թիւը հազիւ հասնում է 24—25 հոգու ազգային ժողովի մէջ, կարողանում են

անցկացնել տալ այդ բանաձևը, որի նպատակը միայն Օրմանեանի ընտրելիութիւնը խափանելն է եղել։

Եւ ահա ինչ ենք տեսնում և նկատում մենք։ Պոլիս են մեզ մօտ Թիւրքահայ պատգամաւորները. Նրանցից շատերը չեն թագցնում և խոստովանում են, որ Օրմանեանից արժանաւոր ընտրելի չկայ, չունեն, «բայց,—ասում են,—ազգային ժողովի որոշումը բարոյական պարտք կը դնէ մեր վրան՝ անոր ձայն չը տալ, որովհետև ան ամբաստանութեան տակ է»։ Եւ երբ դուք հարց էք տալիս նրանց՝ «Ուրեմն ինչու ամբողջ 3 տարի դուք չքննեցիք նրա գործը, վճիռ չարձակեցիք նրա մեղաւորութեան կամ անմեղութեան մասին», նրանք, ամօթահար, պատասխանում են. «Էֆէնդիմ, ատոր մեղքը կը ծանրանայ ոչ թէ մեր, այլ Կեդրոնի երեսփոխաններուն վրայ»։ Եւ մեզ համար ոչ մի կասկած չկայ, որ եթէ կաթողիկոսի ընտրութիւնը կատարուի գաղտնի քուէարկութեամբ նաև քառանուն ցանկը կազմելու ժամանակ, Օրմանեան, առանց այլևայլութեան, կը ստանայ բացարձակ մեծամասնութիւն, որովհետև իրանք Թիւրքահայ պատգամաւորներից շատերը իրանց սրտի և խղճմտանքի խորքում նրան են ճանաչում իբրև արժանաւորագոյն, բայց դեռ գտնուելով հիպնոսի ներքոյ. կաշկանդուած լինելով միայն 24 ձայներով անցած բանաձևով (և սակայն ազգային երեսփոխանական ժողովը բաղկացած է 100-ից աւելի երեսփոխաններից), նրանք քաջութիւն չունեցան թօթափել իրանցից կօշմարը, անարդարութիւնը և անսալ իրանց խղճմտանքի ձայնին։

Պէտք է ասենք, սակայն, որ մեր խօսքը չէ վերաբերում այն մի քանի շատ յարգելի անձանց, որոնք համոզմունքով, գիտակցօրէն հակառակ են Օրմանեանի ընտրութեան։

Իբրև եզրակացութիւն մեր այս տեսութեան՝ կաթողիկոսական հարցի մասին, որ մի քանի օրից յետոյ լուծուած կը լինի, պէտք է ասենք, որ, ըստ ամենայն հաւանականութեան, Օրմանեան սրբազան՝ այդպիսի աննպաստ և անհաւասար պայմանների մէջ դժուար թէ ընտրուի կաթողիկոս ամենայն հայոց, այլ կընտրուի, երևի, նրանից աւելի նուազ արժանիքներով օժտուած կամ բոլորովին անարժան մի անձն։ Եւ դրա հետևանքն այն կը լինի, որ 1) Էջմիածինը կը մնայ իր նախկին անկեալ դրութեան մէջ, քարշ կը տայ իր եղկելի գոյութիւնը և անկարող կը լինի ստեղծագործական գործունէութիւն ցոյց տալ. 2) Ռուսահայ ժողովրդի մեծամասնութեան սիրտը աւելի շատ կը հովանայ Էջմիածնից, և երկար ժամանակ կը թուլանան այն բարոյական հզօր կապերը, որոնցով Էջմիածինը

կապուած է եղել հայ ժողովրդի հետ. 3) Կը սառչեն զգալի կերպով եղբայրական համերաշխութեան զօդերը Թիւրքահայերի հետ, որոնք, անգիտակցօրէն գործիք դառնալով Դաշնակցութեան ձեռքում, իրանք իսկ ճնշուած լինելով նրա բռնապետութեան ներքոյ և ունենալով այդ բռնապետութեան լուծը թօթափելու զօրեղ ըմբոստացումներ, անկարող եղան, շնորհիւ ազգային ժողովի կենտրոնի խմբակցութեան ապիկար գործելակերպի, յետ մղել դաշնակցականների ոտնձգութիւնները և չընկնել նրանց լարած թակարդի մէջ։

Մենք չենք խօսում և այն ծիծաղելի, ոչ մի կրիտիկայի չդիմացող բանաձևի մասին, որ կայացրել են Կ. Պօլսի 20 ապիկար և պորտաբոյծ քահանաներ, յայտարարելով իբրև կրօնական համագումարի որոշումն,—որոշումն, որին չեն մասնակցել արքեպիսկոպոսները, եպիսկոպոսները և վարդապետներից շատերը,—որովհետև այդ որոշման բարոյական և իրաւագիտական սնանկութիւնը ակներև է։

II

## ՊԱՏՐԻԱՐՔԱԿԱՆ ՀԱՐՑ

Եթէ այս ամենից յետոյ կայ մի մխիթարական բան, այդ էլ Կ. Պօլսի հայոց պատրիարքի ընտրութեան հարցի աջող լուծումն է։ Նոյեմբերի վերջին կայացած ազգային երեսփոխանական ժողովը, վերջապէս, երկար ձգձգումներից յետոյ, կարողացաւ ընտրել 54 ձայնով Թիւրքահայոց պատրիարք տէր Յովհաննէս արքեպիսկոպոս Արշարունուն, որ առաջ առաջնորդ էր Բրուսայի թեմի, յետոյ եղաւ պատրիարքական տեղապահ՝ Դուրեան սրբազանի պատրիարք ընտրուելուց առաջ և այժմ քարոզիչ էր Սկիւտարի Թաղում։ Արշարունի արքեպիսկոպոսի ընտրութեան դէմ էին դաշնակցականները, հետևաբար այդ ընտրութիւնը մի յաղթանակ է, որ տարաւ Կենտրոնի խմբակցութիւնը, և մի պարտութիւն, որ կրեցին դաշնակցականները։

Արշարունի արքեպիսկոպոսը Ղալաթիայի լիցէի շրջանաւարտ է, գիտէ լաւ ֆրանսերէն, գերմաներէն, հմուտ է մանաւանդ Թիւրքերէնի մէջ և 54—55 տարեկան է։ Յոյս կայ, որ նրա պատրիարքութիւնը արդիւնաւէտ լինի Թիւրքիայի դժբախտ հայ ժողովրդի համար, որ դեռ տառապում է հին ռէժիմի չարիքներից, դեռ շարունակում է գաղթել և գաղթել Ամերիկա

և այլ տեղեր, դատարկելով Հայաստանը։

Յամենայն դէպս, Մանկունի արքեպիսկոպոսի աղէտալի տեղապահութիւնը, որ արդիւնք էր կոմպրոմիսների՝ կենտրոնի խմբակցութեան և դաշնակցականների միջև, վերջ գտաւ, և Թիւրքահայերը ունեն այժմ մի պատրիարք, որ գիտէ խուժանապետ Շահրիկեանների, Վռամեանների, Զարդարեանների զգաստութեան և կարգի բերել, թոյլ չտալ նրանց անկոչ միջամտութիւնները իր այն պատմական դարձած ժէստով, թէ «Շահրիկեան էֆէնդի, ես սպասաւորի պէտք չունիմ»։

Շնորհաւորում ենք Թիւրքահայերին աջող ընտրութեան համար։

Ցանկանում ենք, որ Երուսաղէմի պատրիարքի ընտրութեան հարցն ևս լուծուի վերջապէս։

Կամենում ենք հաւատալ, որ, ի մեծ ցաւ Վռամեանների, Երուսաղէմի զեղծարար վոհմակի պարագլուխ Դէորգ արքեպիսկոպոս Երիցեանի ջանքերը՝ գրաւելու ս. Յակոբի աթոռը՝ ապարդիւն կանցնեն և պատրիարք կընտրուի մի այլ եկեղեցական։ Հաւանական ընտրելի համարվում է Երուսաղէմի վանքի միաբան Եղիշէ եպիսկոպոս Չիլինկիրեան, որ եպիսկոպոսական ձեռնադրութիւն ընդունեց հանգուցեալ Իզմիրլեան կաթողիկոսից։

III

## ԱՄԵՐԻԿԱՀԱՅԵՐԻ ԱՆՋԱՏՈՂԱԿԱՆ ՁԳՏՈՒՄՆԵՐԸ

Էջմիածնի այժմեան տեղակալի գործած մի սխալը, ինչպէս երևի, առաջ է բերելու մի դէպք, որ ամենևին ցանկալի չէր տեսնել։

Ամերիկայի հայութիւնը իրան առաջնորդ էր ընտրել Մուշեղ եպիսկոպոս Սերոբեանին, որ Կիլիկիայի աթոռի միաբան է, բայց Էջմիածնի տեղակալը չկամեցաւ յարգել և հաստատել այդ ընտրութիւնը, առարկելով թէ Ամերիկայի թեմը «տէրունի» է, այսինքն Էջմիածնական, իսկ Կիլիկիայի աթոռի միաբանը իրաւունք չունի պաշտօնավարելու Էջմիածնական թեմում։ Տեղակալը իրաւունք չունէր այդ խնդրի վերաբերմամբ որևէ կարգադրութիւն անելու։ Արտասահմանեան թեմերի վերաբերմամբ կաթողիկոսին է վերապահուած միայն իրաւունք՝ կարգադրութիւններ անելու, որովհետև նա ազգընտիր է. իսկ տե-

ղակալը, անելով կարգադրութիւն, ձեռնամուխ է լինում կաթողիկոսի պրէրօգատիվներին։ Հետեւաբար՝ տեղակալը ամենից առաջ մեծ ապօրինութիւն է գործել, ձեռնամուխ լինելով կաթողիկոսին միայն վերապահուած պրէրօգատիվին։ Երկրորդ՝ նա պէտք է ըմբռնէր, որ այդպիսի կարգադրութիւնը կարող է պառակտումն առաջ բերել Էջմիածնի և Ամերիկայի հայերի միջև։ Եւ, իրօք, ինչպէս այժմ գիտենք, Ամերիկայի հայերը, ի դէմս այդ երկրում ապրող կիլիկեցի հայերի, դիմում են աբել Կիլիկիայի կաթողիկոսին, խնդրելով ընդունել Ամերիկայի թեմը իր հովանաւորութեան ներքոյ։

IV

## «ՀՕՐԻԶՕՆԻ» ԵՒ ՎԱՃԱՌԱԿԱՆՆԵՐԻ ՄԻՋՆԱԴԵՊԸ

Կաթողիկոսական պատուիրակների ընտրութեան առիթով մղուած պայքարի ժամանակ տեղի ունեցաւ մի միջնադէպ, որի մասին խօսեցինք վերևում։

«Հօրիզօն» թերթը, չկարողանալով տանել հօրիզօնականների պարտութիւնը և համարելով Թիֆլիսի վաճառականներին մեղաւոր այդ բանի մէջ, որովհետև նրանք միացան առաջադէմ ինտելիգենցիային և սւացրին եկեղեցիներում հօրիզօնական կանդիդատներին, իր սրտի մաղձը և օձի թոյնը թափեց վաճառականների վրայ։

Ի պատասխանի, վաճառականութեան աւագ պ. Արշակ Միլեանը, բոլոր վաճառականների կողմից, տպեց «Մշակ» և «Тифлисскій Листокъ» թերթերում մի նամակ, որ պատմական դարձաւ։

Առաջ ենք բերում այդ նամակը, թողնելով նրա լուսաբանութիւնը և նրան հետևող պ. Միլեանի երկրորդ նամակի բացատրութիւնը յաջորդ անգամին։

Ահա այդ նամակը.

«Հօրիզօն» լրագիրը վերջին ժամանակներս մի անհեթեթ արշաւանք է սկսել ընդդէմ Թիֆլիսի հայ վաճառականների և իմ, որ վաճառականների աւագը լինելու պատիւն ունեմ։

«Հօրիզօնի» բռնած այդ դիրքը, նրա այդ տգեղ վարմունքը, մեզ մասամբ հասկանալի է։

«Հօրիզօնի» թէ նախկին և թէ ներկայ ղեկավարները կեանք և գոյութիւն, կենսունակութիւն են ստացել շնորհիւ վաճառականների կամայ թէ ակամայ օգնութեան, օժանդակու-

*թեան։ Բայց այդ արշաւանք յայտարարող «Հորիզոնը» և հորիզոնականները միևնոյն ժամանակ վաճառականներին համարել են միշտ իբր մի «կթան կով», կարծելով միամտաբար թէ նրանք մի անխօս և անտարբեր դասակարգ են, որին կարելի է միայն շահագործել։*

*Ի սկզբանէ անտի հայ վաճառականութիւնը, համարելով իրան իր ազգային եկեղեցու հարազատ զաւակ, և խորին համոզմունքով ու անկաշառ սիրով նախանձախնդիր բոլոր այն ամենի, ինչ որ սերտ կապ ունի այդ եկեղեցու հետ—ուսումնարաններ, կալուածներ, աղքատանոցներ, որբանոցներ, անկելանոցներ, գրադարաններ ու մատենադարաններ, թանգարաններ, կարճ խօսքով՝ զանազան և բազմազան ազգային հաստատութիւններ և հիմնարկութիւններ—կրկնում եմ, հայ վաճառականութիւնը մեր ազգային-եկեղեցական կեանքում միշտ կատարել է առաջնակարգ դեր։ Եթէ երբեմն այդ նրա՝ վաճառականութեան մասնակցութիւնը միայն նիւթական օժանդակութիւնների մէջ է նկատուել, դրա պատճառն էլ եղել է այն, որ այդպիսի ժամանակների մեր ազգային հաստատութիւնների ամենօրեայ ինտելիգենտ ղեկավարները եղել են նոյնպէս միայն ազգային-եկեղեցական շահերով տոգորուած ազնիւ և մաքուր գործիչներ, որոնց և հայ վաճառականութիւնը ամենայն իրաւամբ հաւատացել է իր նիւթականով կեանքի բերած հաստատութիւնների և հիմնարկութիւնների գոյութեան մեքենան։*

*Բայց երբ վերջին տարիներս ազգային գործիչների դիմակի տակ ասպարէզ եկան զանազան մութ, խաւարի հերոսներ, դրամաշորթներ և «քսակ կամ կեանք» ասուած սկզբունքի երդուեալ հետևողներ, որոնք շփոթութիւն առաջ բերելով հասարակութեան մէջ՝ օգտուեցին հանգամանքներից և իրանց ձեռքը գցեցին մեր ազգային հաստատութիւնների և հիմնարկութիւնների ղեկը, միայն և միայն իրանց անձնական շահերին ծառայեցնելու նպատակով, ահա այդ բանը նրանց չաջողեցնելու համար՝ հայ բարձր ինտելիգենցիայի հետ միասին նորից հանդէս եկաւ հայ վաճառականութիւնը իբրև կեղեքիչներին և անազնիւ գործիչներին հալածող մի մեծ ոյժ։*

*Այս անսպասելի դրութիւնը ստեղծուելուց գոհ չէ «Հորիզոնը» և արշաւանք է սկսել հայ վաճառականութեան դէմ։*

*Երբ յանցաւորին բռնում են, նա էլ գոհ չէ լինում։*

*Այսպէս ուրեմն՝ հայ վաճառականութիւնը վերջին տարիներս, «անկախ պատճառներից» ստիպուած, մեր ազգային-եկեղեցական կեանքում ակտիվ գործունէութիւն չէր ցոյց տուել։*

*Այժմս հերթական է դարձած մեր կաթողիկոսական հարցը, մի հարց, որ, ինչպէս վերը ասացինք, շատ մօտ է հայ վաճառականութեան սրտին, աւելի շատ մօտ, քան այն ազգակործան տարրերին, որոնց անունից այդքան յանդգնաբար խօսում է «Հորիզոնը»։*

*Հայ վաճառականութիւնը, տեսնելով որ մեր ս. Գրիգոր Լուսաւորչի թափուր մնացած գահի շուրջը սկսել են վխտալ*

զանազան բախտախնդիր դիմակաւորներ, որպէսզի այդ՝ ամեն մի ազնիւ հայի համար նուիրական սրբութիւնն էլ ձեռքները գցեն և շահագործեն, այլև կորցնելով ամեն մի համբերութիւն, կազմակերպուած իր հաւատի սերտ կապերով, առանց արհեստական ներշնչումների, իր սեպուհ պարտքը համարեց միջամտել և դուրս գցել ասպարէզից այդ վտանգաւոր, կործանարար հերոսներին և գնաց Թիֆլիսի բոլոր եկեղեցիներում սևացրեց այդ սևանալու արժանիներին և ընտրեց այնպիսի անձանց, որոնց վրայ վստահ էր, որ նրանք ոտնատակ չեն անի այն սրբութիւնները, որոնք մեր ազգի պահապան հրեշտակներն են եղել մինչև օրս և կը լինեն յաւիտեան։

Այդ արեց հայ վաճառականութիւնը և այսօր էլ յոյս ունի, որ հայ ազգի հաւատը և Աստուածը թոյլ չեն տայ, որ ս. Գրիգոր Լուսաւորչի աթոռը բարձրանայ մի անարժան և թերահաւատ ոք։

Թո՛ղ «Հօրիզոնը» և նրա նման մտածողները լաւ իմանան, որ միայն կաթողիկոսական հարցով չէ զբաղուելու հայ վաճառականութիւնը։ Ո՛չ, նա մտադիր է իր սեփական խոր համոզմունքով մասնակցել մեր ազգային-եկեղեցական, բարեգործական, կեանքի և միւս խառնաշփոթ ասպարէզների, որպէսզի այդտեղից էլ քշէ մեր ազգի և եկեղեցու հացկատակ և անաշխատ հերոսներին։ Մենք, հայ վաճառականներս, հանդէս ենք եկել և գալու ենք ոչ իբրև մի ուրոյն դասակարգ, որ ունի իր ուրոյն շահերը, ո՛չ, այլ մի մասն այն մեծ զանգուածքի, որ կոչվում է հայ ժողովուրդ, այլ իբրև իրանց քաղաքացիական իրաւունքներին և պարտականութիւններին գիտակից քաղաքացիներ և հայոց եկեղեցու զաւակներ։ Եւ մենք համոզուած ենք, որ ինչպէս ներկայ կաթողիկոսական խնդրում, այսուհետև ևս մեր բոլոր ազգային-եկեղեցական, կուլտուրական և բարեգործական հաստատութիւններին վերաբերեալ խնդիրներում և նրանց բարգաւաճման համար մղուելիք կռիւներում մենք համերաշխ և աջակից կը լինենք հայ ժողովրդի լաւագոյն մասերի, ինտելիգենտ ույժերի հետ։

Թո՛ղ «Հօրիզոնը» և նրա նման մտածողները չկարծեն, թէ հայ վաճառականական դասակարգը, զզուելով դրանց արշաւանքից, կը թողնի ամեն մի ասպարէզ այդ արշաւանքների անազնիւ ասպետներին. ո՛չ, այդպիսի յարձակումներ մեզ, հայ վաճառականներիս, աւելի և աւելի ույժ և ամուր վճռողականութիւն են տալիս մեր հասարակական կեանքի հրապարակը մաքրելու դրանցից, այդ արշաւանքներ և յարձակումներ սարքողներից, մեր հասարակութեան մէջ ցեց դառած այդ անպատշաճ ձրիակերներից։

Խօսքս վերջացնելուց առաջ ես պարտք եմ համարում սրանով միաժամանակ յոյս յայտնել, որ միւս քաղաքների հայ վաճառականներն էլ, իրերի դրութիւնը լաւ ըմբռնելով, մեզ կը հետևեն խօսքով և գործով։

Թիֆլիսի վաճառականների աւագ՝

Արշակ Միլեան

ՇԱՒԱՐՇ

# ԹԱՏՐՈՆԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ

Թատրոնը հասարակութեան հոգեկան-մտաւոր կեանքի զարգացման կարեւորագոյն պայմաններից մէկն է։ Թատրոնը, եթէ նա կանգնած է գեղարուեստական անհրաժեշտ բարձրութեան վրայ, հասարակական տարբեր խաւերի կեանքն է ցոլացնում մեր առջեւ։ Բեմի հասարակական նշանակութիւնը չափազանց խոշոր է։ Նա յաճախ հանդէս է բերում հասարակական և անհատական պայքարների գունեղ պատկերներ. Նա մեզ բարձրացնում ու իջեցնում է սօցիալական պիրամիդայի բարդ, մանուածապատ սանդուղքներով, հարկաւ չափազանց սակաւ անգամ իջեցնելով պիրամիդայի ստորին լաբիրինտները։ Բեմը այն կենդանի հայելին է, որտեղ շատ անգամ անդրադառնում է կեանքի հակասական պայմանների դաժան կռիւը, ուր մէկը կեանքի դառնութեան մրուրն է քամում, միւսը ճոխութեան ու շուայտութեան գրկում փայփայվում, իսկ երրորդը սեփական ճարպի քանակութիւնը իր անձի համար միանգամայն բաւարար համարում...

Թատրոնը մեզանում ունեցել է իր զարգացման պատմութիւնը. հասարակական տրամադրութեան բարձրացման շրջանում, այն է վաթսունական թուականներին, նա եղել է իդէալիստական վերածնութեան արտայայտիչներից մէկը։ Երկու ուղղութիւններ զուգընթաց կերպով բարձրացել էին հայկական բեմի վրայ. պատմական-ողբերգական և կենցաղագրական։ Առաջինը, որ ամբողջովին սքօղուած էր շօվինիստական և կեղծ-կլասիկական շղարշով, անկարող եղաւ երկար պահպանել իր գոյութիւնը, մինչդեռ երկրորդը կենսունակ էր և ժամանակակից։ Յանձին թարգմանական դրամատիկ գրականութեան և Գ. Սունդուկեանի տաղանդաւոր կօմեդիաների՝ հայկական թատրոնը ունեցաւ իր ծաղկման և զարգացման ամփոփ շրջանը։ Թէպէտ հասարակական տրամադրութեան անկման մոմենտները շատ անգամ պատճառ են դարձել իջեցնելու հասարակութեան առաջ բեմի վարագոյրը երկար ժամանակով։

Վերջին տարիները հայկական բեմի ծաղկման մի նոր շրջան է նկատվում Թիֆլիսում։ Հայ Դրամատիկ Ընկերութիւնն ու դերասանական կազմակերպուած խմբերը իրանց սիստեմատիկ ներկայացումներով այդ ծաղկման փայլուն ապացոյցներից մէկն են։ Գործի կազմակերպչական կողմը ըստ ամենայնի գոհացուցիչ համարելով, չենք կարող սակայն չշեշտել, որ չափազանց աղքատ է հայ բեմը ինքնուրոյն՝ բեմական գրուածքներով։ Ժամանակակից կեանքը իր բարդ ելևէջներով ինքնուրոյն պիէսների մէջ մենք չենք տեսնում։ Հայ բեմը պարբերաբար հարստանում է թարգմանական գրուածքներով։

Սակայն որչափ ժամանակից են թէ սակաւաթիւ ինքնուրոյն և թէ բազմաթիւ թարգմանական պիէսները, այդ մասին մենք անհրաժեշտօրէն պէտք է խօսենք մեր թատրօնական ներկայ և ապագայ տեսութիւնների մէջ։

Այստեղ անխուսափելիօրէն հարկադրուած ենք նկատելու, որ թատրօնական գրուածքները քննադատելիս մենք պէտք է կանգնենք որոշ տեսակէտի վրայ, ելակէտ ունենալով մեր հակաիդէալիստական աշխարհահայեացքը։

Մենք այս անգամ կը տանք Հայ Դրամատիկ Ընկերութեան խմբի մի քանի ներկայացումների տեսութիւնը։

* * *

**«Հայրենական տունը»**, *դրամա Զուդերմանի, 4 գործողութեամբ*

«Հայրենական տունը» պատկերացնում է այն ճահիճը, որտեղ կեանքի առաջխաղացութեան և ոչ մի նշոյլ չէ նկատվում. Շվարցէի ընտանեկան այն կղզիացած օջախը, որտեղ ընտանիքի հօր բռնութիւնն ու կամայականութիւնն է տիրապետում, միջնադարեան բիրտ բարքերի խճողումների մի ծանր մղձաւանջ է ներկայացնում։ Նա կտրուած է արտաքին աշխարհից, առաջընթաց կեանքը նրա մօտով է անցնում՝ առանց շարժելու այդ նեխուած ու բորբոսնած ճահիճը։ Patriarchat-ի շրջանում ձևաւորուած ընտանեկան ինստիտուտի բոլոր արտայայտութիւններով, ընտանիքի հօր միահեծանութեան բոլոր տարրերով։

Եւ յիրաւի՝ տեսնելով պաշտօնաթող ծերունի-սպայ Շվարցէին իր ողջ կերպարանքով, ակամայ ընկնում ես մտորումների մէջ, թէ որքան իրական կարող է լինել ժամանակակից կեանքում այդ տիպը, այն էլ ո՛չ բռնակալ, յետամնաց Արևելքում, այլ հասարակական կեանքի բարձացման պրօցէսսի եռուն շըր-

ջանի մէջ գտնուող Արեւմտեան Եւրոպայում։ Սակայն երբ դիտում ես ոչ սոսկ ընտանեկան կազմակերպութեան պրիզմայից, ոչ Շվարցէի անհատական ներքին բռնկումների յաջորդական զարգացման ու պայքարի հոգեբանական հիւսուածքի տեսակէտից, այլ հասարակական կառուցուածքի մի զօրեղ գործօնի շրջանակից, ապա այդ պարագայում ամբողջովին ծառանում է քո առջև տակաւին իւնկերականութեան խոշոր տարրեր իր մէջ ամփոփող Գերմանիան...

Շվարցէն նահապետական ընտանիքի ծնունդ բոլոր հասկացողութիւնների ու նախապաշարմունքների մարմնացումն է, իսկ նրա մեծ աղջիկը՝ Մագդան,—որի փախուստը տանից արդիւնք է հօր դաժան խստութիւնների, որից յետոյ նա «Հայրենական տունն» է վերադառնում արդէն որպէս նշանաւոր արտիստուհի,—այդ ընտանիքի խորտակման թոյլ մարտիկներից մէկը։ Պայքարը մղվում է հօր և աղջկայ միջև։ Բիրտ ծերունին պատրաստ է գնդակահարել իր աղջկան, եթէ սա չկատարէ հօր կամքը, որ է՝ ամուսնանալ այն մարդու հետ, որին աղջիկը ատում է իր հոգու ամբողջ էութեամբ, և միայն նրա համար, որ այդ պարոնը աղջկայ անփորձութիւնից ու թուլութիւնից օգտուելով՝ անցեալում բռնաբարել է նրան։ Հոգեկան այն տանջանքները, որոնց ծանրութեան տակ ճնշվում է Մագդան անյողդողդ հօր պահանջները լսելիս, վերջինիս խղճի վրայ և ոչ մի ազդեցութիւն չեն գործում։ Ընտանեկան հոտած ճահճի նախապաշարմունքները, միահեծան հօր տիրական հասկացողութիւնները այնքան են մթագնել միջնադարեան ծերունու գիտակցութիւնը, որ նա առանց տատանուելու ատրճանակի փողը ուղղում է աղջկայ վրայ, սակայն ֆիզիքական հիւանդութիւնը արգելք է հանդիսանում և հոգեկան բուռն պայքարի միջոցին նա կաթուածահար եղած ընկնում է։

Հին շղթաները, յանձին Շվարցէի, կտրատվում են, և կեանքի նորագոյն ձևի պայքարողը, Մագդան, մնում է հրապարակի վրայ...

Շվարցէի դերը կատարում էր Աբէլեանը. Նա տուեց բռնակալ հօր հոգեկան արտայայտութիւնների բոլոր գծերը. կամակոր, սահմանափակ ծերունու հոգեկան բռնկումները արտայայտեց ամենայն հարազատութեամբ։ Բեմական խոշոր տաղանդ է Աբէլեանը, սակայն այն պայմաններում, որոնց մէջ ապրել է նա տարիների ընթացքում, նրա տաղանդի զարգացման չափը մնացել է որոշ սահմանի մէջ։ Տեսնելով նրան այլազան տիպերի մէջ, ամեն անգամ նկատել ենք նրա տաղանդի բազմակող-

մանիութիւնը․ տարբեր տիպերի ընդօրինակման մէջ նա մտցնում է և տարբեր գծեր․ այդ հանգամանքը մի խոշոր ապացոյց է, որ Աբէլեանը բեմական խոշոր տաղանդ է։ Բայց որչափ է նա զարգացել այն նեղ միջավայրում, որպիսին է Թիֆլիսի հասարակական կեանքը դերասանի առաջադիմութեան համար։ Ահա սա է հարցը։ Տաղանդը իր ամբողջ թափով արտայայտուելու համար կարիք ունի բազմակողմանի զարգացման։ Եթէ Աբէլեանը լինէր համապատասխան պայմանների մէջ, որտեղ բեմական արուեստի հետ իւրացնէր նաև բարդ դերերի ուսումնասիրութեան համար անհրաժեշտ լայն զարգացման տարրերը, ապա այն ժամանակ նա կը լինէր կրկնակի Աբէլեան։

Մագդայի դերը կատարում էր տ. Սիրանոյշը։ Ժիր, կենսուրախ, երիտասարդ կին է Մագդան։ Ճիշտ է, Սիրանոյշին անշուշտ տեղ տեղ աջողվում էր արտայայտել դերի որոշ գծերը հարազատութեամբ, սակայն, ընդհանրապէս, պէտք է ասել, որ նրա շարժումների մէջ նկատելի էր խոշոր չափով դանդաղկոտութիւն, աշխոյժանալու որոշ ճիգ։ Անշուշտ այդ ամենը ունի իր հասկանալի և բնական պատճառները․ որքան էլ փայլուն լինի տաղանդը, հասակը կատարում է իր դերը և իր ճակատագրական դրոշմը դնում նա և՛ տաղանդի արտայայտման վրայ։ Իր տաղանդի արտայայտութեան ամբողջ թափը տ. Սիրանոյշը պէտք է որոնէ համապատասխան դերերի մէջ, ինչպէս նա այդ ապացուցեց Մեդէայի դերում։

Զափազանց տիպիկ, չափազանց բնական էր պ. Ալիխանեանի պաստոր Հեֆտերտինգը։ Առաջին անգամն էինք տեսնում մենք այդ դերասանին, որը իր շնորհալի, մտածուած խաղով միանգամայն գոհացրեց մեզ։ Այդ պաստորը իր արժանաւորութիւնը և կատարած գործի վեհութիւնը լիովին հաւատացող անձնաւորութիւն է․ իր ոյժը իր խօսքն է, թէև մենք ոչ նրա ոյժն ենք ընդունում, ոչ խօսքին հաւատում․ մեծ է այդ գիտակցութիւնը նրա մէջ։ Եւ հէնց պաստորի ճիշտ այդ պատկերը հարազատութեամբ տուեց մեզ պ. Ալիխանեանը։

«Հայրենական տան» միւս դերակատարների մասին մենք ասելու առանձին բան չունենք, որովհետև դերակատարի արժէքը բնորոշող գծեր չգտանք նրանց ո՛չ դերի և ո՛չ խաղի մէջ։ Նրանց մասին առիթ կունենանք խօսելու համապատասխան տեղերում։

* * *

**«ՎԵՐԱՔՆՆԻՉ», կոմեդիա Գոգոլի, 5 գործ.**

*Այժմ անցնենք մեր տեսած երկրորդ ներկայացմանը. դա նոյեմբերի 4-ին տրուած Գոգոլի յայտնի «Վերաքննիչն» էր։ Ներկայացումը գրաւող պէտք է լինէր հէնց այն հանգամանքով, որ պիէսը տրվում էր ուժեղ անսամբլով. բեմ էր դուրս եկել հայ դերասանական գրեթէ ամբողջ խումբը։*

*Կանգ առնենք սակայն նախ պիէսի ներքին էութեան վրայ։ Ի՞նչ է «Վերաքննիչը» ներկայ իրականութեան տեսակէտից։ Այս հարցի պատասխանը գուցէ լինեն այն ընդհանուր սկզբունքները, որոնք ամփոփվում են Գոգոլի տիպերի մէջ։ Սակայն չէ՞ որ ընդհանուր սկզբունքները ընդհանուր են սոսկ տերմինօլօգիայի տեսակէտից, որոնք սակայն իրանց ներքին բովանդակութեամբ առ միշտ ենթարկվում են փոփոխութեան՝ համապատասխան էպօխայի առաջադրած պայմանների։ Չպէտք է մոռանալ, որ «ազատութիւն», «ճշմարտութիւն», «արդարութիւն» և այլն համանման սկզբունքներն ու հասկացողութիւնները միշտ տարբեր են լինում իրանց ներքին իմաստով, երբ հասարակական կեանքի պատմաշրջանները տարբեր են։*

*«Վերաքննիչի» ղեկավարող սկզբունքն է՝ ցոյց տալ տիրող «անարդարութիւնը», «անծայր տգիտութիւնն» ու կլասիկ «կաշառակերութիւնը» ռուս իրականութեան մէջ՝ ճորտատիրական վայրագ պայմաններում։ Սակայն որպիսի՞ տիպերով է նա հրապարակ հանում այդ ամենը։ Անժխտելի է, որ այդ տիպերը միանգամայն համապատասխան էին իրանց գեղարուեստական կօնստրուկցիայով Գոգոլեան պատմաշրջանում. սակայն ծրչափ նրանք բնական ու նօրմալ են այժմ։ Կարելի՞ է այժմ գտնել Խլեստակօվեան մի այնպիսի տիպ, որ իր զարգացման համար կարողանայ գտնել «Անտօն Անտօնօվիչեան» միջավայրն ու հողը. անշուշտ Խլեստակօվեան հակումներով հերոսներ շատ կը գտնուեն, սակայն կը գտնուե՞ն նրանց ոտների տակ սողոսկող Խլոպօֆներ, Լեապկին-Տեապկիններ, մանկամիտ Բօբչինսկիներ և նման տխմարների ամբողջ վոհմակներ... «Վերաքննիչի» ղեկավարող սկզբունքների դէմ չենք խօսում, այլ տիպերի. այդ սկզբունքները դեռ երկար կապրեն մարդկային հասարակութեան մէջ, երբ ներկայ հասարակակարգի ամբողջ կառուցուածքը «վիրար յօշոտելու, վիրար շահագործելու» տարբերից է կազմուած։ Այդ սկզբունքների արտայայտիչ տիպերը հնացած են և այժմութիւնը կորցրած, մի հանգամանք, որի շնորհիւ նրանք այժմ դարձել են անբնական, կօմիկական...*

Ժամանակակից տիպերով ժամանակակից կեանքի պայքարը արտայայտող լրջմիտ պիէսներ,—ահա մեր լոզունգը, ահա մեր սկզբունքը։

Ինչ վերաբերում է «Վերաքննիչի» դերակատարների խաղին, մենք չենք կարող չարձանագրել վերին աստիճանի տիպիկ խաղը պ. Սեւումեանի, որը տեղ տեղ կատարելութեան էր հասցրել՝ և՛ «սարուկ» և՛ «իշխան» Անտոն Անտոնիչի տիպի արտայայտումը։ Ո՜ւր էր, թէ տիպական այդօրինակ գծերի նուրբ վերարտադրման օրինակներ կարողանար տալ մեզ պ. Սեւումեանը ուրիշ դերերում եւս։ Մենք նրան բեմի վրայ տեսնում էինք առաջին անգամ։

Անկասկած լաւ էր պ. Աբէլեանը Օսիպի դերում, սակայն որքան էր յիշեցնում նրա գրիմը հայ գիւղացուն, որը արխալուղի փոխարէն ողորմելի դարձած սիւրտուկով էր կատարում իր «կլոր» շարժումները, որպիսիք յատուկ էին Լէվ Տօլստոյի գեղարուեստօրէն ստեղծագործած հռչակաւոր «սոլդատիկ» Կարատայեւին։

Խլեստակովը... պ. Ալիխանեանի Խլեստակովը սակայն այն չէր, ինչ որ պահանջում էր Գոգոլի «Վերաքննիչը»։ Որքան պ. Ալիխանեանը տիպիկ էր և ամփոփ՝ «Հայրենական տան» մէջ պաստորի դերում, այնքան նա անաջող էր իր դանդաղաշարժ ու լրջմիտ Խլեստակովով։ Պէտք է շեշտենք առանձնապէս, որ համանման տիպերը, մեր կարծիքով, պ. Ալիխանեանի համար միանգամայն անհամապատասխան են։

Պ. Աւետեանը իր Բօբչինսկիով անշուշտ իր կոչման բարձրութեան վրայ էր կանգնած։

* * *

**«Միրրա Էֆրօս»**, *դրամա Գորդինի, [illegible] գործողութեամբ.*

Մեր տեսած երրորդ ներկայացումն էր Գորդինի «Միրրա Էֆրօսը»։

Մենք վերևը դիտմամբ լռեցինք տ. Մայսուրեանի մասին, որպէս զի այս դրամայի նկատմամբ խօսելիս արտայայտենք մեր կարծիքը։

Ինչու՞ է Գորդինը Միրրա Էֆրօսին հոգեկան ծանր տանջանքների գնով բաժանում իր հարստութիւնից ու զաւակներից և ապա կրկին բերում հասցնում հաշտութեան գաղափարին։ Ինքնուրոյն, անյողդողդ, խելամիտ Միրրա Էֆրօսը պէտք է արդեօք թուլամորթութեան մի այնպիսի քայլ անէր, որ

գրեթէ գիտակցօրէն պատրաստէր իր առևտրական տան սնանկութիւնը և այնպէս խելակորոյս հեռանար իր սրբութիւն-սրբոցից, իր մասնաւոր սեփականութիւնից՝ յօգուտ իր ատելի հարսի։ Չենք հաւատում Գօրդինին։ Բայց դա չէ մեզ հետաքրքրողը. մեզ զբաղեցնողը այն միջավայրն է, որտեղ բաղխվում են երկու կանացի տիպերի անհատական իրաւունքները՝ միևնոյն սահմանների շրջանում։ Մարտնչում են սկեսուրն ու հարսը։ Ընտանեկան միևնոյն յարկը երկու կանանց համար շատ նեղ է. ընտանեկան փոթորիկ, լարուած յարաբերութիւններ, անտանելի մթնոլորտ։ Փոթորկի ականատեսները՝ երկու թուլամորթ երիտասարդ պարոններ (Միրրայի զաւակները), որոնցից մէկը թեթևամիտ ոմն, միւսը թուլամիտ... բառի բուն նշանակութեամբ կողմնակի հանդիսատեսներ են։ Եւ Միրրա Էֆրօսը պիտի սրա՞նց յանձնէր իր ողջ կարողութիւնը... Գրուածքի կենտրոնական միտքը պէտք է որոնել երկու կանանց պայքարի մէջ։ Պայքարի առանցքը ոսկին է և նրա հետ համերաշխ՝ ծախսելու ազատութիւնը. սա նորեկ հարսի՝ Իօսէլէի կնոջ՝ երազն է։ Բայց ի՞նչ է Միրրայի երազը. սեփականութեան զգացումը՝ իր որդու նկատմամբ, ուստի և անդրդուելի պահանջ հնազանդութեան՝ եկող հարսի վերաբերմամբ։ «Թուլամիտ» Իօսէլէն երկու կնոջ «սեփականութեան» օբիեկտն է հանդիսանում. մէկի անյողդողդ մայրական զգացումն է քաշում նրան դէպի ինքը, միւսի՝ ամուսնական սէրն ու կապը, և այդ երկու կանայք խոտի այն երկու դէզերն են, որոնց արանքում շուարած կանգնած է մնացել բուրիդանեան պատմական էշը և ի վերջոյ քաղցից սատակել... Դժբախտ Իօսէլէին այդպիսի դրութիւն էր վիճակուած. և չնայելով որ այդ «թուլամիտը» մօր և կնոջ պայքարի մէջ պասսիվ էր միանգամայն, սակայն փողի խնդրում ըստ ամենայնի վճռական ու ակտիվ, մինչև իսկ պատրաստ՝ իր եղբօր կոկորդը ըստ կարգին տրորելու...

Երկու պայքարողներից ո՞ւմ կողմը կանգնի հանդիսատեսը, երկուսից որի՞ն համարի իրաւացի՝ ընտանեկան խնդրում։

Կասկած չկայ, որ ընտանեկան կեանքի տեսակէտից Միրրա Էֆրօսը պէտք է տեղի տար և բաւականանար իր «իրաւասութեան» սահմաններով։ Շէնդէլէն, հարսը, լիակատար իրաւունք ունէր անձեռնմխելի համարելու իր ընտանեկան կեանքի ինքնուրոյնութիւնը։ Սկեսուրները շատ յաճախ են խորտակել ընտանեկան անդորրութեան ամեն հնարաւորութիւն, երբ ձեռնամուխ են եղել ըստ իրանց քմահաճոյքի կամ հասկացո-

ղութեան կարգաւորելու ուրիշի կեանքը, թէկուզ իրանց մերձաւորի։

Սա, ի հարկէ, պիէսի ղեկավարող պրինցիպի արտայայտութիւնն է, որը մենք արձանագրեցինք իբրև սոսկ պրինցիպ։ Բայց թէ ինչպէս է խճճել այդ հարցը Գօրդինը, տալով Միրրա Էֆրոսին դրական յատկութիւններ, համակրելի գծեր և հարստութիւն, իսկ Շէնդէլէին՝ չարանենգ կնոջ բացասական տարրերը իր աղքատ ու գծուծ ծնողներով, դա այլ խնդիր է, որը ըստ ամենայնի կապուած է հեղինակի անհատական հասկացողութիւնների հետ։

Այսօրինակ բարդ պիէսի բարդ հերոսուհու՝ Միրրա Էֆրոսի դերը միանգամայն կենդանի, միանգամայն հարազատ գծերով արտայայտեց տ. Մայսուրեանը։ Հաստատակամ, իր իւրաքանչիւր խօսքի նշանակութիւնը գիտակցող կնոջ բոլոր բարեմասնութիւններով հանդէս եկաւ յարգելի դերասանուհին։ Որ տ. Մայսուրեանը խոշոր ընդունակութիւն ունի ստեղծելու ամփոփ տիպեր, դա երևաց վերոյիշեալ դերի կատարման մէջ։ Հոգեկան խորին դրամատիզմի արտայայտութիւնը, առողջ դատող Միրրայի իւրաքանչիւր քայլը մտածուած ու հարազատ էին։ Մայսուրեանի Միրրա Էֆրոսը ստիպում էր մեզ մասնակից լինել նրա հոգեբանական բոլոր վերապրումներին, թէև դա արդիւնք էր զգացմունքների ներշնչման։ Տրամաբանութիւնը սակայն այլ բան էր թելադրում մեզ...

Բաւարար, գոհացուցիչ էր պ. Միրզայեանի Սօլօմօնը։ Պ. Շահխաթունին արտայայտուել չէր կարող Իօսէլէի դերով։ Տ. Ադամեանի մասին կը խօսենք այլ անգամ, երբ առիթը կը հանդիսանայ։

Մեր ներկայ տեսութիւնը յիրաւի երկարացաւ։ Պէտք է կանգ առնենք։

Սակայն անկարող ենք լռութեամբ անցնել այն ներկայացման վրայով, որ տեղի ունեցաւ Արտիստ. Թատրօնում Նոյեմբերի 19-ին։ Հրապարակում տ. Սիրանոյշն էր իր կլասիկ Մեդէայով, որը այդ գիշեր բուռն կերպով ասպարէզ նետեց իր տեմպերամենտի ամբողջ խարոյկը, փայլեց իր տաղանդի ամբողջ թափով, արտադրելով հոգեկան կօրովի մի ջերմ նմուշ...

Տ. Սիրանոյշի մասին ըստ էութեան կը խօսենք մի այլ անգամ։

***

«Համլէտ», ողբերգութիւն Շէքսպիրի, 5 արարուածով

Մեր թատրոնական տեսութիւնը աւարտելուց յետոյ էր, որ Նոյեմբերի 26-ին հայոց դրամատիկ խումբը խաղաց Շէքսպիրի «Համլէտ» ողբերգութիւնը։

«Համլէտի» ներկայացումը հայ բեմի համար խոշոր դժուարութիւնների հետ կապուած մի երեւոյթ է, ուստի և նրա նկատմամբ լռութեամբ անցնելը համարում ենք անհնարին։

Համլէտ... երկմտութեան, սկեպտիցիզմի որպիսի՜ խոշոր մարմնացում է այս տիպը կլասսիկ գրականութեան մէջ։

Հոգեբանական այն բարդ հիւսուածքը, որի մէջ ամփոփուած են հանճարեղ հոգու զօրեղ արտայայտութիւնները, իր շուրջը ստեղծել է քննադատական և ուսումնասիրական մի ահագին գրականութիւն, որի համար իրաւամբ նկատում է Գէորգ Բրանդէսը, թէ դա ազատօրէն կարող է հաւասարուել՝ քանակի տեսակէտից՝ ամբողջ գրականութեան հետ։

Համլէտ... Հոգեկան կօնտրաստների մի ամբողջ հնոց է սա, որը իր խարոյկի մէջ շատ շատ դերասանների այրել է, որոնք իրանց ոյժերը ուզել են փորձել այդ դերով՝ բազմիցս մռայլելով իրանց ապագայի հեռանկարը։

Այդ բարդ ու կնճռոտ դերի կատարողութեան մէջ յաղթանակով դուրս եկողների թիւը չափազանց սահմանափակ է եղել...

Պատմական այն կլասսիկ պիէսները, որոնց մէջ մենք գտնում ենք այնպիսի յարակայուն սկզբունքներ, որոնք ընդհանուր կարող են համարուել նաև մեր ժամանակակից պատմաշրջանի համար, այդօրինակ գրուածքները ներկայացնելիս՝ բացի համապատասխան դերակատարներից՝ ռեժիսեօրական մասի վրայ անհրաժեշտ է շատ մեծ հոգատարութիւն ունենալ։ Այս պայմանը առաւելապէս պէտք է ի նկատի ունենալ «Համլէտը» խաղալիս։ Ռեժիսեօրական մասի ուժեղութիւնը պէտք է կայանայ նրանում, որ նրա ներկայացուցիչը պէտք է նախապէս որոշ չափով ուսումնասիրած լինի այն պատմական շրջանը, որի մէջ ծնունդ են առել ներկայացուելիք տիպերը, և ապա, նախ քան դերերի բաժանումը, թէ պիէսի ընդհանուր պատմական կառուցուածքի և թէ նրա առանձնայատկութիւնների նկատմամբ համառօտ տեղեկութիւններ հաղորդի դերասանական խմբին։ Դա մի չափազանց կարեւոր պայման է պիէսի ընդհանուր ոգին ըմբռնելու համար։ Սակայն այս հանգամանքը «Համլէտի» համար ունի մեծ մասամբ տեխնիկական

նշանակութիւն, որովհետև ողբերգութեան մէջ Համլէտի դերը պահանջում է կատարողական խոշոր տաղանդ, հոգեբանական հակադրութիւնների խորին ըմբռնումն։

Շէքսպիրի Համլէտը արդիւնք է պատմական այն ողբերգութիւնների, որոնք իրար յաջորդում էին անգլիական քաղաքական միջավայրում, երբ Մարիա Ստիւարտին գլխատելուց յետոյ՝ ցոփ ու շուայտ կեանքով թագաւորում էր Եղիսաբէթը XVI դարի վերջերին։ «Համլէտի» գենեզիսի պատմութիւնը մեզ աւանդում է, թէ այդ մեծամիտ, ինքնահաւան թագուհու գլխատումների քաղաքականութիւնը շատ խոշոր չափով ազդել է Շէքսպիրի հոգեկան դրութեան վրայ։ Շրջապատող իրականութիւնը իր ծանր հետևանքներով, բարձր շրջաններում տիրող դաւադրութիւնները, յաճախ կատարուող եղբայրասպանութիւնները՝ իշխելասիրական տենչով բռնուածների,—ահա այն մռայլ երևոյթները, որոնք խորին մելամաղձութեան կնիքն են դրոշմել Շէքսպիրի հոգեկան կացութեան վրայ, մանաւանդ այդ ժամանակ է տեղի ունենում և նրա Համլէտ որդու մահացումը։ Կուտակուած փաստերը նա հիւսում է ժամանակակից փիլիսոփայական այն մտքերով, որոնց արտայայտիչներն էին Ջորդանո Բրունո և Մօնտէն, որոնցից և մեծապէս օգտուել է Շէքսպիրը։

Համլէտը հանճարեղ է այնպէս, ինչպէս ինքը Շէքսպիրը։ Իսկապէս «Համլէտի» փաստական բովանդակութիւնը, որը սեփականութիւն է համարվում Սաքսօն Գրամմատիկի, չափազանց պարզ և անպաճոյճ մի պատմութիւն է. սակայն հարկաւոր էր լինել հանճար, որ այդ անպաճոյճ պատմութեան շրջանակում կարելի լինէր զետեղել մի բարդ ու խորիմաստ ողբերգութիւն։

Սկեպտիցիզմի դասական ներկայացուցիչն է Համլէտը. Նրա երկմտութիւնը իր բոլոր բարդ արտայայտութիւններով անդրադառնում է նրա իւրաքանչիւր քայլի վրայ։ Նրա ամեն մի ձեռնարկութիւնն, որ յաճախ յղի է լինում ողբերգական հետևանքներով և չափազանց արագ է հասունանում իբրև խընդիր, միշտ մնում է անկատար։ Վճռական բօպէին իսկ երկմըտութիւնը իր փիլիսօփայական ձևակերպումներով խոչընդոտ է հանդիսանում գործողութեան աւարտման։ Սկեպտիկ Համլէտը սակայն և չափազանց վրէժխնդիր է. Նրա թունաւորուող տրամաբանութիւնը՝ փիլիսօփայական մտքի մէջ ամփոփուած՝ աստիճանաբար զարգացնում է իր ներքին դրամատիզմը։ Սակայն և՛ սկեպտիցիզմի, և՛ վրէժխնդրութեան զգացման տիրապետութեան շրջանում Համլէտի գլխին առմիշտ սաւառնում է անբա-

ժան մելանխոլիան, որ մռայլօրէն ընդգրկել է հանճարեղ երիտասարդի ամբողջ էութիւնը։

Անիրաւ, մեղկ, աւազակաբարոյ, վայրագ ու փչացած միջավայրի հանդէպ իր բողոքող էութեամբ կանգնած է վշտամած Համլէտը, և այդ պարագայում դա ոչ այն Համլէտն է, որպիսին կարող էր լինել Դանիմարքայի դուքսը, այլ շատերից հալածուած, քաղաքական բռնակալ պայմանների լուծը զգացող, «մեծերի» ստոր ու տմարդի պահանջների արժէքը ըմբռնող Շէքսպիր-Համլէտը։ Եւ հեղձուցիչ մթնոլորտի այն մղձաւանջը, որ անհուն տառապանք էր պատճառում Համլէտին, վերջինիս հանճարեղ միտքը ենթարկում էր փիլիսոփայական խոկման, հրապարակ նետելով տիեզերական առեղծուածների մի ամբողջ շարան։

Մենք խորապէս համոզուած ենք, որ Համլէտի երեքհարիւրամեայ գոյութիւնը պայմանաւորուած է ոչ թէ նրա ընտանեկան դրամատիզմի բարդութեամբ ու խորութեամբ, այլ կլասիկ երկմտութեան, համաշխարհային (իր ժամանակի հասկացողութեամբ) մելանխոլիայի և փիլիսոփայական, տիեզերական այն առեղծուածներով, որոնցով պարուրուած է Համլէտի էութիւնը։

Ահա այն նիւթը, որ պէտք է բազմակողմանի լուսաբանութիւն ստանայ Համլէտի դերը ստանձնողի համար, որպէսզի դերակատարը ըմբռնել կարողանայ տիպի բոլոր առանձնայատկութիւնները, կարողանայ խորը թափանցել նրա դիսսօնանսներով խտացած հոգեկան աշխարհը։

Եւ երբ մենք որոշում ենք այն դիրքը, որի վրայ պէտք է կանգնած լինի Շէքսպիրի ողբերգութիւնը խաղացող խումբը ընդհանրապէս, իսկ Համլէտի դերակատարը առաւելապէս, և համեմատում նոյեմբերի 26-ի ներկայացման հետ, մենք մեր գնահատման տեսակէտից գալիս ենք չափազանց ողբերգական եզրակացութեան։

Ո՞ւր էր երկմտութեան մէջ տատանուող, միջավայրի դէմ ծառացող փիլիսոփայ, խոհուն Համլէտը։ Ո՞ւր էր նրա գլխին սաւառնող համաշխարհային մելանխոլիան, որի անհուն աղբիւրից են բղխել յետագայում՝ հասարակական նոյնօրինակ միջավայրի զաւակներ՝ Գէօթէի Ֆաուստն ու Բայրօնի և Հէյնէի գրչի հանճարեղ արտադրութիւնները։ Ո՞ւր էր այն օրը՝ վրէժխնդրութեան կրակով բռնուած Համլէտի ծաղրն ու սարկազմը, հոգեկան տրամադրութիւնների բարդ ելևէջները, մտքի կռիւը, սրտի թախիծը...

Գուցէ մեր պահանջը չափազանց խիստ է, բայց մենք չէ՞

որ պէտք է կրիտերիում ունենանք Շէքսպիրի Համլէտը. յամենայն դէպս Նոյեմբերի 26-ի ներկայացումը հեռու էր նաև մեր պահանջի մինիմումից։

Տ. Սիրանոյշը որքան զօրեղ, որքան կատարեալ Մեդէա էր, այնքան «սովորական», մակերևութային Համլէտ էր։ Չպէտք է մոռանալ, որ Համլէտն առնուազն 30 տարեկան խոհուն, աննորմալ հանճարեղութեան տարրերը իր մէջ կրող մի երիտասարդ է և ոչ 19 տարեկան պատանի. տ. Սիրանոյշը, բացի կին լինելուց, նաև միմիայն տաղանդ է. կարող է տաղանդը հանճար արտայայտել. այս հոգե-ֆիզիօլօգիական երկու տարրերը պէտք է խստօրէն բաժանուեն իրարից. նրանց էութիւնը միանգամայն տարբեր է։ Ճիշտ է, տ. Սիրանոյշը կլասիկ դպրոցի ներկայացուցիչ է, նրա տաղանդի կորովը մեծ է, բայց Համլէտի համար դա քիչ է, նրա տաղանդի չափը կարող է միայն Համլէտի աղօտ իլլիւզիան տալ և ո՛չ նրա իսկական պատկերը։

Միւս դերակատարների մէջ մենք առանձնապէս կարող ենք ընդգծել պ. Աբէլեանի խաղը առաջին դերասանի դերում. այստեղ ևս կարողացաւ նա ամփոփ ու լրիւ տալ միջնադարեան դերասանի տիպը Թագաւորական պալատում։ Ապա չափազանց տիպական, հիանալի էր պ. Աւետեանը գերեզմանափորի դերում. իր փոքրիկ դերով նա մոռացնել տուեց մի վայրկեան, որ քառորդ ժամ առաջ մեռել էր իբրև Պօլօնիուս. մի վայրկեան թողեց այնպիսի տպաւորութիւն, կարծես այդ մարդը՝ գանգերով շրջապատուած՝ իսկական գերեզմանափոր է։ Հաճելի տպաւորութիւն թողեցին նաև պ. պ. Ալիխանեանն ու Շահխաթունին՝ առաջինը Հօրացիօյի, երկրորդը՝ Լաէրտի դերում։ Անաջող էր միանգամայն տ. Յասմիկը Թագուհու դերում. դա ի հարկէ նրա յանցանքը չէ. մեղքը ծանրանում է ամբողջապէս ռէժիսեօրի վրայ։ Ինչո՞ւ այդ օրը բացակայում էր տ. Ադամեանը Օֆէլիայի դերում, իսկ տ. Մայսուրեանը՝ Թագուհու։ Միթէ քի՞չ դրամատիզմ կար վերջինիս դերում։ Հարկաւ տ. Մայսուրեանն Օֆէլիայի հիւանդոտ հոգու անդրադարձումները կատարեց վարպետութեամբ, բայց երբեմն ի նկատի պէտք է առնել նաև անսամբլի հարցը, որի ներդաշնակութիւնից կախուած է պիէսի ամբողջական տպաւորութիւնը։

ՍՈՒՐԽԱԹԵԱՆ

# ՌՈՒՍԱԿԱՆ ԿԵԱՆՔ

## ԱՌԱՋԻՆ ՌՈՒՍ ԳԻՏՆԱԿԱՆ Մ. Վ. ԼՈՄՈՆՈՍՈՎԸ

Ուղիղ երկու-հարիւր տարի առաջ Ռուսաստանի ամենահեռաւոր հիւսիսում մի ձկնորսի ընտանիքում ծնուեց Մ. Վ. Լոմօնոսովը։ Դա մի տաղանդ էր, որի ներքին ձգտումը դրդեց նրան թողնել իր ընտանեկան յարկն ու ծննդավայրը և ոտով անցնել այն ամբողջ տարածութիւնը, որ կազմում է Արխանգէլսկից մինչև Մոսկվա մայրաքաղաքը։ Նրա ջերմ ձգտումը՝ դա ուսումն ու կրթութիւնն էր, որի համար նա ամեն զրկանք պատրաստ էր կրելու։

Գալով Մոսկվա նա ամբողջ հինգ տարի սովորում է Զաիկօնօսպասսկայա ճեմարանում և ապա շնորհիւ բարօն Կորֆի ճանապարհվում է արտասահման՝ փիլիսոփայութիւն, ֆիզիկա և լեռնային գործը ուսումնասիրելու համար։ Թէպէտ Լոմօնոսովը դեռ Մոսկուայում ձգտելիս է եղել կենդանի գիտութիւն ձեռք բերելու, սակայն բացի աստուածաբանութիւնից, լատինական քերականութիւնից ուրիշ բան չէին սովորեցրել այնտեղ։

Երբ նա ընկաւ Մարբուրգ, որտեղ դասաւանդում էր նըշանաւոր փիլիսոփայ Վօլֆը, այն ժամանակ հասկացաւ միայն Լոմօնոսովը, թէ որն է իսկապէս իսկական գիտութիւնը։ Նա այստեղ մի առանձին թափով նուիրվում է բնագիտական առարկաների ուսումնասիրութեանը և իր կատարած առաջադիմութեամբ շրջապատողների զարմանքն է շարժում։

Այդպէս նա Գերմանիայում մնում է ամբողջ 5 տարի և, շնորհիւ իր խոշոր ընդունակութիւնների, փայլուն կերպով աւարտում է իր ուսումը։ Նախ նա ուսումնասիրում է այն բոլոր հոսանքները, որոնք այն ժամանակ տիրող էին գիտութեան զանազան ճիւղերի մէջ, և իւրացնում գիտական հետազօտութիւնների որոշ մետօդները, որոնց նա պատրաստուել էր կի

բարկելու իր գիտական գործունեության ասպարեզում՝ Ռուսաստան վերադառնալուց յետոյ։ Այդ բոլորի վրայ պէտք է աւելացնենք և այն, որ Լոմոնոսովը լաւ ըմբռնել էր գերմանական համալսարանի գիտական ույժերի զարգացման հիմնական պատճառները։ Նա համոզուեց, որ համալսարան գնալու համար համապատասխան նախապատրաստութիւն է հարկաւոր, այն է՝ միջնակարգ կրթութիւն. միջնակարգ ուսումնարան պէտք էր ունենալ, որպիսի երևոյթից միանգամայն զուրկ էր խաւարի մէջ խարխափող Ռուսաստանը XVIII դարում։

Վերադառնալով Ռուսաստան, Պետերբուրգ, 30-ամեայ Լոմոնոսովը չափազանց ողորմելի վիճակի մէջ գտաւ կրթական և գիտական գործը։ Նա տեսաւ, որ գիտական աշխատանք կատարելու համար հարկաւոր են ստեղծել համապատասխան պայմաններ, որոնցից իսպառ զուրկ էր այն ժամանակուայ Ռուսաստանը։ Որպէս բնագէտի, որպէս քիմիկոսի, նրան հարկաւոր էին դասական համապատասխան գործիքներ, լաբորատորիական պիտոյքներ, սարք և այլն։ Նա վճռում է ամեն կերպ աշխատել հիմնելու մի գիտական լաբորատորիա՝ ոչ միայն իր քիմիական աշխատանքների համար, այլ և գիտական ասպարէզին նուիրուող նոր երիտասարդների համար։ Համապատասխան զեկուցումներով նա դիմեց Գիտութիւնների Ճեմարանին, սակայն մերժում ստացաւ, որովհետև այդօրինակ մի «արհեստանոցի» (լաբորատորիայի) կարիք չէր զգացվում Պետերբուրգում...

Լոմոնոսովը սակայն չլռեց. նա ամբողջ վեց տարի սպասեց և ապա հասաւ իր նպատակին. ստացաւ մի աղքատիկ լաբորատորիա, որտեղ նա աշխատում էր և ուսուցանում երիտասարդներին։

Բայց ուսուցման հէնց առաջին շրջանում նա մի այլ խոչընդոտի հանդիպեց։ Սովորող աշակերտները նոյն «ճեմարանցիներն» էին, որոնք բացի լատիներէնից և աստուածաբանութիւնից ոչինչ չգիտէին, իսկ այդ առարկաները քիմիայի հետ ոչինչ կապ չունէին։ Լոմոնոսովի վիճակը կրիտիկական էր. նա այդտեղից էլ մի ելք էր փնտռում. այդ ելքը նա համարում էր միջնակարգ դպրոց հիմնելու մէջ, որը նման լինէր գերմանական գիմնազիաներին։

Բացի այդ՝ Լոմոնոսովը անկախ չէր իր պաշտոնավարութեան մէջ. ուսուցանելու պարտաւոր էր նա նրանց, որոնց առաջարկում էր կառավարութիւնը՝ անպատրաստ սեմինարիստներին։

Այստեղ Լոմոնոսովը զգաց համալսարանի անկախութեան անհրաժեշտութիւնը։ «Վատ չէր լինի,—ասում է նա,—եթէ համալսարանն ու ճեմարանը, ըստ արտասահմանեան օրինակի, ունենային որոշ ազատութիւններ, մանաւանդ եթէ ազատ լինէին ոստիկանական պարտականութիւններից»։ Այդ մտքերը նա իրագործում էր աստիճանաբար, հիմնելով Պետերբուրգի համալսարանը և նրան կից գիմնազիոնը։

Եթէ ի նկատի ունենանք այն պայմանները, որոնց մէջ գտնվում էր դպրոցազուրկ, խաւար Ռուսաստանը XVIII դարում, մենք կը հասկանանք Լոմոնոսովի ձեռնարկութիւնների ամբողջ ծանրութիւնը։ Այդ ամենը իրականացնելու և որոշ դրութեան մէջ պահելու համար այն ժամանակ հարկաւոր էր անօրինակ եռանդ ու տոկունութիւն։ Գիտութեան առաջին ռահվիրան լինելով, Լոմոնոսովը չէր կարող սահմանափակուել սոսկ իր մասնագիտութեան մէջ այն ժամանակ, երբ մի առարկայ աւանդելու համար հազար ու մի տեխնիքական դժուարութիւններ էին առաջ նետվում։ Ռուսական լեզուն չունէր այն ճկունութիւնը, որ հարկաւոր էր գիտութիւն աւանդելու համար։ Լոմոնոսովի առաջ լեզուն կոկելու ու մշակելու խնդիրն էլ էր կանգնած. Նա չշփոթուեց այս կէտում ևս. նա սկսեց ուսումնասիրել լեզուն, կենդանի լեզուն և այնքան առաջադիմեց, որ սկսեց դասագրքեր հրատարակել ու գրականութեամբ զբաղուել։ Լինելով առաջին ռուս գիտնականը և մօտ կապեր ունենալով բարձր շրջանների հետ, Լոմոնոսովը ստիպուած էր՝ ի պաշտօնէ՝ զանազան դիֆֆիրամբներ գրել «տօնական հանդէսների» առիթով կամ բարձրաստիճան որևէ նորածնին ներբողներ նուիրել...

Ռուս գրականութեան մէջ Լոմոնոսովը եղաւ արտայայտիչ կեղծ կլասսիկական ուղղութեան։

Նրա հասարակական գործունէութիւնը ռուսական կուլտուրական կեանքում անշուշտ նշանաւոր տեղ է բռնում ռուս հասարակական կեանքի զարգացման պատմութեան մէջ։

Իսկ ինչ վերաբերում է նրա գիտական գործունէութեանը, այստեղ պէտք է ասել, որ նա իբրև մասնագէտ անկարող եղաւ ստեղծել այնպիսի պայմաններ, որտեղ կարող լինէր կատարել իր արտայայտած գիտական ենթադրութիւնների նկատմամբ համապատասխան հետազօտութիւնները։ Այն անտանելի դրութիւնը, որի մէջ ապրում էր այդ ռուս առաջին գիտնականը, նրա գիտական տաղանդի զարգացման և արտայայտման առջև այնպիսի պատեր էին ծառացնում, որ նրա գիտական

բոլոր աշխատութիւնները մնացին անկատար։

Հանճարն ու տաղանդը, որպէս անհատական յատկութիւններ, ենթակայ են զարգացման օրէնքին, որի համար էլ հարկաւոր են համապատասխան պայմաններ։

Լոմոնոսովը, իբրև այդպիսին, իբրև տաղանդաւոր գիտնական, շատ ջանք, շատ աշխատանք գործ դրեց, հոգեկան ամեն տանջանք կրեց, սակայն տիրող խաւարը այնքան խօլ էր, այնքան անթափանց, որ նա չկարողացաւ իր ընդունակութիւնների բոլոր թափովը գործել ու արտայայտուել։

ԽԱԹ.

***

## ՏՕԼՍՏՕՅԻ ՄԱՀՈՒԱՆ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԻԹՈՎ

Անցաւ մի ամբողջ տարի՝ Եասնայա-Պօլեանայի փիլիսօփայի մահուան օրից, սակայն նրա մասին ձայները չեն լռում. ամեն տեղից նրա գրուածքների քննադատութիւնն ենք կարդում, նրա հերոսների դատն ենք լսում, նրա նոր պիէսի՝ «Կենդանի դիակի» բազմաթիւ ներկայացումները տեսնում։ Սա ապացոյց է, որ Տօլստոյի գրական հռչակը մեծ է եղել, նրա գործերի արժէքը բազմակողմանի։ Բազմազան են նրա մասին եղած քննադատութիւնները։

Շատերը Տօլստոյ-փիլիսօփային զատում են Տօլստոյ-գեղարուեստագէտից և առանձին գնահատութիւն տալիս այդ երկուսից իւրաքանչիւրին։ Մեր կարծիքով, դա թիւրիմացութեան արդիւնք է, որովհետև այդ երկու ուղղութիւնները Տօլստոյի մէջ ուժող կերպով օղակուած են եղել։ Եթէ մենք քննելու լինենք նրա գրական բոլոր գործերը, կը տեսնենք, որ նրա հեղինակութիւնների առաջին շարքից մինչև վերջինները, կարմիր թելով անցնում է մի փիլիսօփայական միտք, այն է՝ բարոյական ինքնակատարելագործութեան և ինքնավերածնութեան սկզբունքը իւրաքանչիւր անհատի համար։ Փիլիսօփայական այդ միտքը Տօլստոյը զօրեղ գոյներով զարգացնում է իր գեղարուեստական գրուածքների հերոսների մէջ։

Սակայն այդ վերածնութեան, բարոյական ինքնակատարելագործութեան սկզբունքի իրականացումը նա անհրաժեշտ էր գտնում գլխաւորապէս քաղաքացիական տարրերի համար։ Ապա և նրա գեղարուեստական բոլոր հեղինակութիւնների մէջ մենք տեսնում ենք, թէ ինչպէս արիստօկրատ հերոսները մէկը միւսի ետևից ճգնում են, արտաքին շարժառիթներից ազդուած,

ռամկանալ, ազատուել իրանց շրջանի նախապաշարմունքներից և իրանց անհատական կեանքը կարգաւորել համաձայն քրիստոնէական վարդապետութեան պահանջների։ Մենք տեսնում ենք, թէ ինչպէս Տօլստօյը գիւղացիական տարրի մէջ է գտնում իր սկզբունքների իրականացման համար անհրաժեշտ հողը, որի պարզ ու իդիլլիական աշխարհը հեռու է ժամանակակից եւրօպական կուլտուրայի բոլոր «աւերիչ» յատկութիւններից։

Ընդունելով, որ ժամանակակից կուլտուրան խոշոր չարիք է մարդկութեան բարոյական առաջադիմութեան տեսակէտից, Տօլստօյը ամենախիստ քննադատութեան է ենթարկում այդ կուլտուրայի բոլոր տարրերը։ Նա հակառակ է հասարակական կեանքի բարդացման այն ձևերին, որոնք ստեղծում են հազար ու մի ինստիտուտներ և խոչընդոտ հանդիսանում պարզ ու խաղաղ կեանքի զարգացման։ Ըստ այնմ նա խստօրէն քննադատում է հասարակական կեանքի ժխորում ծնուող ու հաստատուող այն հիմնարկութիւնները, որոնք պատմականօրէն իրանց ծագումը ստանում են տնտեսական-հասարակական համապատասխան պայմաններից։ Անխնայ կերպով մտրակում, ծաղրում է Տօլստօյը ներկայ հասարակակարգը. նա որոշ անալիզի ենթարկելով այդ ամբողջ կազմակերպութիւնը՝ ոչնչութիւն յայտարարեց իշխանութեան սկզբունքի բոլոր տարրերը. տեսնելով որ հասարակական խոշոր չարիքների ծագումը մասնաւոր սեփականութիւնից է բղխում, նա անողորմ խարազանման ենթարկեց այդ ինստիտուտը, որին ներկայ հասարակակարգը տակաւին սրբազան սկզբունք է յայտարարում։

Վերջապէս Տօլստօյը սնանկ յայտարարեց մարդկային կեանքի ներկայ ընթացքը, շեշտելով որ նա տանում է նրան դէպի անդունդ, դէպի ապականումն։

Եւ պէտք է շեշտենք, որ նրա ժխտման այդ գործը շատ հոյակապ է. նրա եզրակացութիւնը ներկայ հասարակակարգի սնանկութեան նկատմամբ ճիշտ է և համապատասխան սեփականազուրկ տարրի անհատական և հասարակական բոլոր պահանջներին ու շահերին։

Սակայն մարդկային կեանքի ներքին կազմակերպութեան ժխտմամբ հարցը չէ պարզվում։ Անհրաժեշտ են միջոցներ, որոնցով հնար լինի դարմանել այդ կեանքը հասարակական բոլոր չարիքներից։ Եւ Տօլստօյը առաջարկում է այդ միջոցները, ենթադրելով որ դրանց գործադրմամբ փոխադարձ շահագործման բոլոր հնարաւորութիւններն ու պատճառները կը վերանան։

Նա առաջարկում է այն միջոցները, որ առաջարկել է մարդկութեանը աւետարանը՝ սրանից մօտ 2000 տարի առաջ...

Եւ մի՞թէ այդ վերացական սկզբունքները, որոնք 2 հազար տարուայ ընթացքում մազաչափ անգամ անկարող եղան փոխել հասարակակարգը, այսուհետև պիտի կարողանան որևէ դրական գործ կատարել այդ ուղղութեամբ...

Մոռանա՜լ, այն էլ այժմ, որ կրօնական բնոյթ կրող նմանօրինակ ձևակերպումները հասարակական կեանքի ընթացքը իսպառ չեն փոխում. մոռանա՜լ, որ մարդկային կեանքի զարգացման պատմութիւնը միանգամայն այլ ֆակտորներով է պայմանաւորուած...

Սակայն «դրական» փիլիսոփայ Տոլստոյից ուժեղ է և մեծ՝ ժխտող Տոլստոյը։

Ահա նրա ամբողջ արժանիքը. և անշուշտ ա՛յդ Տոլստոյի առջևն է, որ մենք պիտի խոնարհուենք՝ նրա մահուան այս յիշատակելի տարեդարձին։

ԽԱԹ.

***

## ԿՈՒՊՐԻՆ-ԱՆԴՐԷԵՎԵԱՆ ՄԻՋԱԴԷՊԸ

Լոմոնոսովի ծննդեան երկու-հարիւրամեակի և Տոլստոյի մահուան տարելիցի առիթով տեղի ունեցած ուրախալից վերյիշումների շրջանը մթագնուեց գրող Կուպրինի մի սխրագործութեամբ, ուղղուած իր գրչակից ընկերոջ՝ Անդրէեվին։ Օտար տան մէջ հիւրասիրուած, կեր ու խումից յետոյ հիւրերի ներկայութեամբ Կուպրինը բոլորովին անսպասելի կերպով վայր է ձգում Անդրէեվին և սկսում ծեծել... Մէջ են ընկնում ընկերները, և հազիւ հազ աջողվում է ազատել Անդրէեվին։ Շատերն էլ արժանանում են Կուպրինի հարուածներին։

Ինչո՞վ բացատրել այս տգեղ ու միևնոյն ժամանակ ցաւալի, անպատուաբեր և ռուս գրողին վարկաբեկող դէպքը։

Մի բան անժխտելի է, որ դէպքը տեղի է ունեցել կերուխումից յետոյ։ Կերուխումից յետոյ տեղի ունեցաւ նաև այն սխալ կարգադրութիւնը ծովակալ Բօստրեմի կողմից, որի հետևանքն էր երկու նորակառոյց զրահանաւերի վտանգուելը Սև ծովում մօտ ժամանակները։ Այդ զրահանաւերի նորոգութիւնը մի քանի հարիւր-հազարներ է նստելու գանձարանին, իսկ

*ծովակալ Բօստրեմը ներկայումս դատի է ենթարկուած։ Չէ՞ որ 1904 թ. ճապօնական նաւերի գիշերային առաջին յարձակումը տեղի ունեցաւ Պօրտ-Արտուրում տեղի ունեցած կերուխումից յետոյ ծովագնացների շրջանում...*

*Ուրեմն գինին ոչ թէ միայն «ուրախ առնէ զմարդ», այլ և խելքն էլ է առնում..*

*Նոյնպէս հին, սակայն միշտ նոր մնացող պատմութիւն։*

ԿԱԼԽԱՍ

---

# ՎԻՃԱԿԱԳՐԱԿԱՆ ՎԵՐՋԻՆ ՏԵՂԵԿՈՒ-ԹԻՒՆՆԵՐ

## ՌՈՒՍԱԿԱՆ ԿԱՅՍՐՈՒԹԵԱՆ ԱԶԳԱԲՆԱԿՈՒԹԵԱՆ

### ՔԱՆԱԿԻ, ՑԵՂԱՅԻՆ ՍՏՈՐԱԲԱԺԱՆՈՒՄՆԵՐԻ, ԴԱԻԱՆԱՆՔԻ ԵՒ ԴԱՍԱ-ՅԻՆ ԿԱԶՄԻ

---

Մինչև 1909 թուի յունուարի 1-ը Ռուսաստանի ազգաբնակութեան թիւը հասնում էր 157,079,500 մարդու, իսկ Ֆինլանդական նահանգերի հետ միատեղ հաշուած՝ ազգաբնակութեան երկու սեռի թիւը հաւասարվում էր 160,095,200 հոգու։ Ամբողջ ազգաբնակութեան թիւը կայսրութեան այլևայլ մասերում՝ Ներկայացնում էր հետևեալ պատկերը.—Եւրոպական Ռուսաստան 161,505,5 հազար, Շուրջ-Վիսլայեան Նահանգներում՝ 11,671,8 հազար, Կովկասում՝ 11,392,4 հազար, Սիբիրում՝ 7,878,5 հազար, Միջին-Ասիայի շրջաններում՝ 9,631,3 հազար. Ֆինլանդիայում 3,015,7 հազար։

1897 թուին կազմուած վիճակագրութիւնից յետոյ կայսրութեան ազգաբնակութեան քանակը մեծացաւ 33.199,000 մարդով, կամ 26,2%. Այս ամբողջ բնակչութիւնը ապրում է 19.099,887 քառ. վերստի վրայ, այսինքն ամեն մի քառակուսի վերստի վրայ գալիս է 8,3 մարդ։ Թէ ինչ չափով աննշան է Ռուսաստանի ազգաբնակութեան խիտ լինելը համեմատած այլ պետութիւնների հետ, այդ երևում է հետևեալ տուեալներից. իւրաքանչիւր քառակուսի վերստի վրայ գալիս է՝ Բելգիայում—279,9 մարդ, Հոլլանդիայում—177,2, Անգլիայում—157,6, Իտալիայում—132,0, Գերմանիայում—127,2, Աւստրօ-Ունգարիայում—85,6, Ֆրանսիայում—83,1, Դանիայում—20,5, Շվէդիայում—13,5, Հիւս.-Ամերիկայի Միացեալ-Պետութիւններում—9,5 և Նորվէգիայում—8,1 մարդ։

Այսպիսով Ռուսաստանը ազգաբնակութեան խտութեան կողմից համարեա թէ հաւասարվում է Նորվէգիային և 34 ան-

գամ աւելի նուազ խիտ է բնակեցուած, քան Բերգիան, 20 անգամ աւելի նուազ՝ քան Անգլիան, 16 անգամ պակաս՝ քան Գերմանիան և 10 անգամ աւելի քիչ՝ քան Ֆրանսիան։ Ամենաշատ բնակչութիւն կայ Շուրջ-Վիսլայեան երկրում, ուր, օրինակ, Պետրակովի նահանգում մի քառակուսի վերստի վրայ ապրում է 166,6 բնակիչ, իսկ ամենաքիչ բնակեցուած է Սիբիրը, որտեղ Եակուտի շրջանում մի վերստի վրայ ապրում է 0,1 մարդ։ Եւրոպական Ռուսաստանում ամենից ստուար քանակութեամբ բնակեցուած են հետևեալ նահանգները. Պոդոլի՝ 97,6, Կիեվի՝ 97,2, Մոսկվայի՝ 96,3, Պոլտավայի՝ 79,1, Կուրսկի՝ 71,1, Պետերբուրգի՝ 69,8, Խարկովի՝ 65,1, Չերնիգովի՝ 62,0, Տուլայի՝ 63,3, Բեսսարաբիայի՝ 60,1, Օրլովի՝ 60,1. իսկ ամենանուազն են՝ Աստրախանինը՝ 5,8, Վոլոգդայինը՝ 4,4, Օլոնեցի՝ 3,7 և Արխանգելինը՝ 0,5. Կովկասում ամենաշատ բնակիչ կայ Քութայիսի նահանգում, որ է՝ 52,4, իսկ ամենաքիչը Սև-ծովեան շրջանում, այսինքն՝ 16,5. Սիբիրում ազգաբնակութեան խտութիւնը իջնում-բարձրանում է 4,2-ից (Տոմսկի նահանգ) մինչև 0,03-ը (Կամչատկայի)։ Միջին-Ասիական երկիրներում ամենախիտ շրջանն է Սամարղանդինը (19,1), Ֆերգանինը (15,0), իսկ ամենանուազը՝ Անդրկասպեանը (1,8)։

Կայսրութեան գիւղական բնակչութիւնը գերակշռում է քաղաքների ազգաբնակութեան վրայ։ 160,095,000 հոգի բնակիչների ընդհանուր թուից (երկսեռ) քաղաքներում ապրում են 21,614,000 մարդ, այսինքն միայն 13,5%, մինչդեռ ուրիշ պետութիւնների մէջ քաղաքների բնակիչների քանակը տալիս է այսպիսի տոկոս. Անգլիայում և Վալլէսում—78,0, Նորվէգիայում—72,0, Գերմանիայում—56,1, Ֆրանսիայում—41,2, Դանիայում — 38,2, Հոլլանդիայում—36,9, Իտալիայում—26,4։ Այսպիսով Ռուսաստանը քաղաքների բնակչութեան թուականի կողմից բռնում է վերջին տեղերից մէկը։ Քաղաքային ամենաշատ ազգաբնակութիւն կայ Շուրջ-Վիսլայեան նահանգներում, իսկ յետոյ գալիս են՝ Ֆինլանդիան, Միջին-Ասիական շրջանները, Եւրոպական Ռուսաստանը, Կովկասը և Սիբիրը։

Զատ-զատ նահանգներում ամենաշատ բնակչութիւն է ապրում այն քաղաքներում, որտեղ խոշոր արդիւնաբերական, առևտրական և վարչական կենտրոններ են, ինչպէս, օրինակ, Կուրլանդիայի, Խերսոնի, Լիֆլեանդիայի, Մոսկվայի և Պետերբուրգի նահանգներն են. առանձնապէս տարբերվում են մայրաքաղաքների երկու նահանգները (49,6%) և (72,1%), իսկ ապա Պետրօվեանը—35,8%, Վարշավայինը—42,9%, Թիֆ-

լիսինը—21,9%, Բաթումինը—25,1% և Սև-ծովեանը—46,5%, Ամուրեանը—31,2% և Շուրջ-ծովեանը—29,5%։ Չնայած բաղկացուցիչ ազգերի խայտաճամուկութեանը, կայսրութեան մէջ ռուսները կազմում են ամբողջ ազգաբնակութեան 2/3 մասը։ Աշխարհագրական առանձնակի մասերում նրանք ամենամեծ տոկոսը կազմում են Արևմտեան Սիբիրում (88,7%), յետոյ Եւրոպական Ռուսաստանում (80,0) և Արևելեան Սիբիրում (53,9), ամենաքիչ մասը Միջին-Ասիայում (8,9) Շուրջ-Վիսլայեան երկրում (6,7) և Ֆինլանդիայում (0,2)։ Ընդհանրապէս, Ռուսաստանի վարչական 96 մասերից 53-ում ռուսները կազմում են բոլոր բնակիչների կէսից աւելին, իսկ 6 մասերում՝ չորրորդ մասից աւելին. ռուսներ համարեա թէ չկան Թուրքեստանում (ընդամենը մօտ 2%), Շուրջ-Բալտեան նահանգում (մօտ 5 1/2%), Ֆինլանդիայում (0,2%), Շուրջ-Վիսլայեան երկրում (6%), ի բաց առեալ Սէդլէցի և Լիւբլինի նահանգները, որտեղ ռուսները կազմում են 17% և 21%, և Անդրկովկասում (մօտ 4%), բացառութեամբ Սև-ծովեան նահանգի, որտեղ ռուսները 60% են։

Կայսրութեան բաղկացուցիչ ազգերի մէջ թուական գերազանցութեան կողմից՝ ռուսներից յետոյ երկրորդ տեղն են բռնում Թուրք-թաթարական ցեղերը, որոնք կազմում են ընդհանրապէս պետութեան բովանդակ ազգաբնակութեան 10,6%-ը։ Թուրք-թաթարական գլխաւոր բնակատեղին ներկայանում է Միջին-ասիական աշխարհը. այնտեղ (Թուրքեստանում և անապատային շրջաններում) ապրում են 8 միլ. թուրք-թաթար, կամ համարեա կէս մասը ամբողջ կայսրութեան մէջ ապրող թուրք-թաթարական տարրի (15 1/2 միլ.). այնուհետև նրանք ամենամեծ թիւն են կազմում Եւրոպական Ռուսաստանում (6 միլ.) և Կովկասում (2 միլիոն)։ Երրորդ տեղը գրաւում են լեհերը, կազմելով ամբողջ պետութեան 5,8%-ը։

Նրանք համարեա թէ բացառապէս ապրում են Եւրոպական Ռուսաստանում, որտեղ կազմում են 7,5%, և մանաւորապէս Շուրջ-Վիսլայեան երկրում, որտեղ նրանք ամբողջ ազգաբնակութեան 71,8%-ն են կազմում։ Չորրորդ տեղը գրաւում են ֆինները, որոնք ապրում են Եւրոպական Ռուսաստանի և Արևմտեան Սիբիրի հիւսիսում։ Բոլոր ֆինների թիւը հասնում է 6 միլիոնի, որով նրանք կազմում են ամբողջ ազգաբնակութեան 4,5%-ը։ Ֆիններից յետոյ թուականի կողմից հետևում են հրէաները։ Նրանց թիւը նմանապէս 6 միլիոն է. նրանք ապրում են գլխաւորապէս որոշուած սահմաններում։

Շուրջ-Վիսլայեան երկրում նրանք կազմում են մօտ 13,5%, իսկ ամբողջ Ռուսաստանում՝ 3,6%։

Արեւմտեան Ռուսաստանի բոլոր տեղերում հրէաները կազմում են 10%-ից աւելի։ Ներկայիս հրէաները անցել են Դնէպր գետը, և նրանց կարելի է հանդիպել Եւրոպական Ռուսաստանի բոլոր նահանգներում։ Ի վերջոյ վեցերորդ խոշոր մարդաբանական խումբ է ներկայացնում լիտովօ-լատիշական ցեղը, որը բաղկացած է $3^1/_2$ միլիոնից։ Այդ ցեղը բնակվում է բացառապէս Եւրոպական Ռուսաստանի հիւսիս-արեւմուտքում, ամբողջովին գրաւած ունենալով Նէման և Արեւմտեան Դվինա գետերի ստորին հոսանքների միջև եղած տարածութիւնը։ Կուրլեանդեան նահանգում այդ ցեղը կազմում է 78%, իսկ Կովենի նահանգում՝ 68%.

Վերոյիշեալ 6 ազգութիւնները—ռուսները, թուրք-թաթարները, լեհերը, ֆինները, հրէաները և լիտովցիները—ներկայացնում են Ռուսաստանի ամենաշատ մասը, ընդհանուր թւով կազմելով աւելի քան 93%-ը պետութեան բովանդակ ազգաբնակութեան, այնպէս որ՝ մնացած բոլոր ազգերը կազմում են 7%, և նրանց թիւը ընդհանրապէս հազիւ է 10 միլիոնի հասնում։ Թւականի կողմից ամենաշատը այս թւից գերմաններն են (շվէդներ և գերմաններ), այն է՝ 2 միլ. աւելի, կամ մինչև 1,6%, վրացական ցեղը—մօտ $1^1/_2$ միլիոն (?) կամ 1,1%-ը պետութեան ամբողջ ազգաբնակութեան։ Վրացիներն ապրում են Անդրկովկասում։ Կովկասեան լեռնականները մօտ 1,300,000 են։ Հայերի թիւը հաւասարվում է մօտ 1,300,000-ի (?)։ Թւականի կողմից վերջին տեղն է բռնում մօնգօլական ցեղը, որը ապրում է պետութեան այլևայլ մասերում։

Եթէ անցնենք պետութիւնը բաղկացնող ազգաբնակութեան դաւանած կրօններին, կը տեսնենք, որ ուղղափառները կազմում են մօտ 70%, յետոյ գալիս են մահմէդականները, որոնք կազմում են ամբողջ ազգաբնակութեան 10,83%-ը. կաթօլիկները՝ 8,91%, բողոքականները՝ 4,85%, հրէադաւանները՝ 4,05% և հայ-լուսաւորչականները 0,96%։ Ոչ-քրիստոնեաները կազմում են պետութեան ամբողջ ազգաբնակութեան 0,50%։ Առանձնակի կերպով իւրաքանչիւր աշխարհագրական մասում ազգաբնակութեան կրօնական կազմը այսպիսի է։ Յատկապէս Եւրոպական Ռուսաստանում գլխաւոր տարրը կազմում են ուղղափառները (83,66%), Շուրջ-Վիսլայեան երկրում՝ կաթօլիկները (44,32%), Ֆինլանդիայում՝ բողոքականները (98,0%) և Սիբիրում կրկին ուղղափառները (91,14%). Միջին-Ասիայում՝

մահմէդականները, որը ամբողջ բնակչութեան 90,29%. Կովկասում ամբողջ ազգաբնակութեան կէսը կազմում են ուղղափառները*), այն է՝ 50,94%. սրանցից մի քիչ աւելի են մահմէդականները (1/3) 34,54% և 1/8 հայ-լուսաւորչականները՝ 12,49%։

Ռուսաստանի բնակչութեան դասային ստորաբաժանումներն այս կերպարանքն ունեն. 1000 բնակիչներից 771 մարդը գիւղացիներ են, 107-ը՝ մէշչաններ, 66-ը՝ օտարազգիներ, 23-ը՝ կօզակներ, 15-ը ազնուականներ, 5-ը՝ հոգևորականներ և 6-ն էլ պատուաւոր քաղաքացիներ։ Բազմաթւութեան կողմից առաջին տեղը բռնում են գիւղացիները կամ գիւղերում ապրողները, որոնք կազմում են համայն Ռուսաստանի 86%-ը։ Պետութեան իւրաքանչիւր մասում գիւղացիները կազմում են՝ Միջին-Ասիայում — 97,2%, Սիբիրում — 90%, Կովկասում—86,7%, Շուրջ-Վիսլայեան աշխարհում—71,1%։ Ըստ քանակի երկրորդ տեղն են գրաւում մէշչանները (107) և վերջապէս երրորդ՝ ազնուականները, որոնց թիւն է (իւրաքանչիւր 1000 բնակչին)՝ Կովկասում—24 մարդ, Շուրջ-Վիսլայեան երկրում—19 մ., Եւրօպական Ռուսաստանում—15 մ., Սիբիրում—8 մ. և Միջին-Ասիայում—4 մարդ։

Ահա ձեզ Ռուսաստանի բազմացեղ և բազմալեզու բնակչութեան մօտաւոր նկարագիրը։

Յ. Գ.

---

*) Սրանց թւումն են անշուշտ նաև ուղղափառ վրացիները։

Յ. Գ.

# ԱՐՏԱՍԱՀՄԱՆԵԱՆ ԿԵԱՆՔ

Ներկայումս ամենքի հայեացքները ուղղուած են Հեռաւոր Արևելք։ Չինաստանում անսպասելի կերպով բռնկուեց յեղափոխական շարժում։ Սկզբնապատճառը կառավարութեան խոստմնազանցութիւնն էր սահմանադրութեան հաստատման համար։ Յեղափոխական շարժումը աճեց և հետզհետէ սաստկացաւ այն աստիճան, որ այժմ չինական յեղափոխութիւնը, հսկայական չափերի հասած, ընդգրկել է Երկնային Կայսրութեան լայնածաւալ երկիրները ու սպառնում է տակն ու վրայ անել ամեն ինչ, եթէ կառավարութիւնը կը շարունակէ յամառել և ժողովրդի պահանջներին ընդառաջ չգնալ։

Ինչպէս և ամեն տեղ և ամեն ժամանակ նոյնանման պարագաներում, Չինաստանում էլ յեղափոխութեան բռնկման առաջին շրջանում չինական կայսերական կառավարութիւնը աշխատեց կոպիտ ոյժի՝ զէնքի և հալածանքի միջոցով խեղդել ժողովրդական շարժումը, սակայն հանդիպեց անաջողութեան։ Յեղափոխութիւնը տարածվում էր, իսկ կառավարական զօրքերի մեծ մասն էլ անցնում էր յեղափոխականների կողմը։

Յուսահատ և անհաբեկուած կառավարութիւնը ապա դիմեց երկրորդ միջոցին՝ կայսերական հրովարտակների հրատարակման, որոնցով բազմաթիւ խոստումներ էին անվում ժողովրդին։ Սակայն այդ էլ չօգնեց։

Այն ժամանակ պատուաբեր քաղաքական աքսորից կառավարութիւնը կանչեց յայտնի սահմանադրական և բարենորոգումների կողմնակից Իւանշիկային, որի ժողովրդականութիւնը և հեղինակութիւնը իբր թէ պէտք է խաղաղեցնէր բորբոքուած երկիրը։

Սակայն ուշ էր։ Ոչ կայսեր հանդիսաւոր երդումը սահմանադրութեան, ոչ ծամեր կտրելու հրովարտակը, ոչինչ չօգնեց։ Յեղափոխութեան յաղթական գնդերը հարաւից մօտենում են մայրաքաղաքին։ Կառավարութիւնից անջատուած լայնածաւալ

նահանգները արդէն կազմակերպել են ժամանակաւոր կառավարութիւն։ Մօնգոլիան, Չինական Թուրքեստանը, Տիբեթը և Մանջուրիան պահանջում են ինքնավարութիւն, իսկ չինական ժողովրդի խոշոր մասը հասարակապետութիւն՝ դաշնակցական հիմունքներով, նման Հիւսիս-Ամերիկեան Միացեալ-Պետութիւնների հասարակապետութեան։

Ինչպէս երևում է, մօտենում է այդ հսկայական յեղափոխական դրամայի վերջին գործողութիւնը. Ներկայումս դադարած են պատերազմական գործողութիւնները, և երկու կողմերը բանակցում են հաշտութիւն կնքելու ու վերջ տալու եղբայրասպան կռուին։

Նոյնն են պահանջում և մեծ պետութիւնները, որոնք չեն միջամտել մինչև օրս, սակայն որոնց առևտրական շահերը մեծ չափով տուժում են երկրի խառնակ վիճակից։

Արժանի է առանձին ուշադրութեան առնել այն երևոյթը, որ ժամանակաւոր յեղափոխական կառավարութիւնները այնպիսի օրինակելի կարգ ու կանոն մտցրին ապստամբուած նահանգներում, այնպիսի յարգանքով ու ապահովութեամբ պահպանում են օտարազգիների կեանքն ու գոյքը, որ օտարի միջամտութեան ոչ մի տեղիք ու առիթ չկայ։ Իւրաքանչիւրի օրինական շահերի պաշտպանութիւն, միջազգային պարտականութիւնների կատարման և առևտրի ապահովութիւն, կուլտուրական և կրօնական հաստատութիւնների պահպանութիւն, և որ կարևորն է աւելի՝ օրէնքի, կարգ ու կանոնի և խաղաղութեան պահպանումը,—ահա այն պայմանները, որոնց համար չինական յեղափոխականները ամէն ջանք ու ճիգ են թափում անխախտ գործադրելու և չինական յեղափոխութիւնը դարձնելու աւելի պակաս արիւնալի։

Մեզ հասնող տեղեկութիւնները այլևայլ գազանութիւնների, սպանութիւնների մասին կամ պրօվօկացիօն բնոյթ են կրում, կամ կատարվում են չինական կայսերական կառավարութեան ագէնտների միջոցով օտար պետութիւնների միջամտութիւնը առաջ բերելու և ժողովրդի մէջ հակակրանք և ատելութիւն սերմանելու դէպի յեղափոխական գործիչները։ Սակայն այս դէպքում ևս կառավարութիւնը անաջողութեան է հանդիպում։

Չինաստանը մինչև օրս համարվում էր դարաւոր անշարժութեան և միակերպութեան կլասիկ երկիր։ Ոչ ոքի մտքով անգամ չէր կարող անցնել, թէ այդ երկիրը, որ ամէն ինչով հիմնովին և մինչև իսկ աչք ծակելու չափ տարբեր արտա-

քինով, նիստ ու կացով և կենցաղով զանազանվում է կուլտուրապէս առաջ գնացած երկիրներից, մի գեղեցիկ օր դառնալու է յեղափոխութեան վայր համամարդկային վեհագոյն գաղափարների գործադրման համար։

Սակայն, ինչպէս ամեն ինչ տիեզերքում, մարդկային պատմութիւնն էլ չէ կարող մնալ անշարժ։ Ինչպէս վերև նկատեցինք, անշարժութեան կլասիկ երկիր համարուող Չինաստանն էլ շարժուեց։ Այլապէս էլ չէր կարող լինել։ Հօ չէ՞ կարելի պատմութեան օրէնքների դէմ գնալ։

Չինական կայսերական բարձր կառավարութիւնն էլ հրատարակեց իր մեղայականը։ Նա մեղադրում է վատ խորհրդատուներին և աստիճանաւորներին, որոնք անճիշտ, սխալ և միտումաւոր տեղեկութիւններ էին տալիս գահին, ամեն ինչ դուրս բերում վարդագոյն գոյներով և մատնանշում ժողովրդի անհուն սէրն ու խանդավառութիւնը դէպի գահը։

Սակայն այս մեղայականն էլ չօգնեց, և յեղափոխութեան հերոսը՝ գլխաւոր ղեկավարը՝ բժիշկ Սուն-Եատ-Սէնը աճապարում է Նիւ-Եօրկից Չինաստան՝ ընտրուելու չինական հասարակապետութեան առաջին նախագահ։

Սակայն ինչը ստիպեց չին ժողովրդին անդառնալի կերպով ձեռք քաշելու միահեծանութիւնից, կայսերական տոհմից և պահանջելու հասարակապետութիւն։

Առաջին՝ ներքին պատճառներ, այսինքն տնտեսական սօցիալական պայմաններ, որոնք ամեն տեղ նոյնն են եղել, ուր թագաւորել է միահեծանութիւնը, որի հետևանք՝ ստրկութիւն և աղքատութիւն ժողովրդական մասսաների։ Երկրորդ՝ արտաքին դրդապատճառներ. շնորհիւ ճանապարհների հաղորդակցութեան, տեխնիկայի և գիտութեան զարգացման՝ մարդկութիւնը այնպիսի սերտ կապերով է շաղկապվում, որ կարծէք կազմում է մի ընտանիք. և ինչ որ մի ժողովրդի հետ է պատահում,—լաւ է կամ վատ,—դա անմիջապէս դառնում է հեռագրի և լրագրի շնորհիւ ընդհանուրի սեփականութիւն և օրինակ, խրատ ուրիշների համար։ Եապօնիայի հզօրանալն ու բարգաւաճումը, չին-եապօնական և ռուս-եապօնական պատերազմները, ռուսական յեղափոխութիւնը, Թիւրքիայի և Պարսկաստանի յեղափոխութիւններն և պետական յեղաշրջումները խորապէս ազդեցին չինական ժողովրդի գիտակից տարրերի վրայ։ Չին մեծ ազգը զգաց, որ իր հայրենիքին ևս վտանգ է սպառնում. եթէ հին կարգով շարունակէ ապրել, որ հզօր է և բարգաւաճ այն ժողովուրդը, որն ինքն է իր բախտը տնօրի-

նում, իսկ քաղաքականապէս ստրուկ ազգերը մատնուած են կորստի և կամ օտարի լուծը քաշելու։ Այս բանին բազմաթիւ ապացոյցներ է տալիս մանաւանդ վերջին դարի պատմութիւնը։ Չին ժողովրդի շփումը եւրոպական ազգերի հետ առևտրական և այլ ասպարէզների վրայ՝ բացեց նրա աչքերը, և նա զարթնեց դարաւոր քնից ու անշարժութիւնից՝ թօթափելու միահեծանութեան ստրկական լուծը։

Չինաստանում գերիշխող դերը պետական ասպարէզում վարում են մանջուրները, որոնց հովանաւորում է կայսերական տունը, որովհետև կայսերական դինաստիան ծագում է մանջուրներից։ Չին ժողովուրդը աւելի կախեալ վիճակի մէջ է, չնայելով որ թէ թուով, թէ դիրքով և թէ կուլտուրայի տեսակէտից անհամեմատ բարձր է հիւսիսի լեռնական մանջուրներից։ Այստեղից է ծագում այն դարաւոր ատելութիւնը, որ տածում է չին ժողովուրդը մանջուրների և կայսերական մանջուրական տոհմի նկատմամբ։

Մանջուրիան XIV դարում կազմում էր Չինաստանի նահանգներից մէկը և կառավարվում էր չինական նահանգապետներով։ Մանջուրական բազմաթիւ ցեղերի առաջնորդներից մէկը՝ Նուրխացի անունով՝ XVI դարում նուաճեց և հպատակեցրեց միւս ցեղերին, ապա էլ հռչակեց իրան կայսր։ Այս պատճառ դարձաւ Չինաստանի և Մանջուրիայի միջև բազմամեայ պատերազմի։ Չինաստանում թագաւորում էր այն ժամանակ Մին հարստութիւնը։ Չինական ներքին խռովութիւններն ու մանջուրական հեծելազօրքի գերազանց զինուորական յատկութիւնները ընկճեցին Չինաստանին, և յաղթողը եղաւ Նուրխացին։ Մին հարստութեան վերջին կայսրը 1644 թ. կախուեց, և չինական գահը անցաւ այժմեան թագաւորող մանջուրական՝ Դայիցին հարստութեան։ Այդ ժամանակից մանջուրները ստացան շատ իրաւունքներ և արտօնութիւններ, բազմաթիւ պաշտօններ պետական կենտրոնական վարչական կազմի մէջ, կայսերական թիկնապահ զօրքերը կազմվում են մանջուրներից և այլն։ Կայսերական տան իշխանութիւնը հիմնվում էր բացառապէս մանջուրական զինուորական ոյժի վրայ, իսկ ոչ-մանջուրական զօրքերի հրամանատարներ նշանակվում էին միմիայն մանջուրներից։ Անցեալում շատ փորձեր են եղել տապալելու մանջուրական լուծը, սակայն անաջող։ Չինացիները բնաւորութեամբ խաղաղասէր ժողովուրդ են և միշտ տեղի են տուել մանջուրական զինուորական ոյժին։

Այդ տեսակ փորձերից ամենանշանաւորն է այսպէս կո-

չուած տայպինգների ապստամբութիւնը 1849—1864 թ.։ Ներկայ յեղափոխութեան նման՝ տայպինգների ապստամբութիւնը բռնկուեց հարաւում և շատ շուտ տարածուեց Եան-ցզի-ցզեան գետի հովտում։ Արդէն ապստամբները գրաւել էին Խանկօուն, Վուչանը, Նանկինը և Շանխայը։ Ապստամբների առաջնորդն էր մի ոմն՝ Սիխւտ-Սուէն, միստիք յակումներով մի անձն, որ շատ համակրում էր քրիստոնէութեան և նրա տարածման։ Նա յայտարարեց Նանկինը մայրաքաղաք, իրան էլ կայսր և հիմնադիր չինական կայսերական տոհմի ու նաև Քրիստոսի կրտսեր եղբայր։ Այսպիսով Չինաստանը ունեցաւ երկու կայսր. հիւսիսում՝ մանջուրական, իսկ հարաւում՝ չինական։ Չինական կառավարութիւնը անզօր գտնուեց զսպելու ապստամբութիւնը և դիմեց եւրոպացիների օգնութեան։ Դէպի քրիստոնէութիւնը ունեցած համակրանքն էլ չօգնեց տայպինգներին։ Ամենաստորին կարգի արկածախնդիր եւրոպացիներից կազմեցին մի գունդ, և անգլիացի Գորդոնի հրամանատարութեամբ հնար եղաւ ճնշել ապստամբութիւնը։ Շատ հաւանական է, որ եթէ այդ աջակցութիւնը չլինէր, չինացիք 50 տարի առաջ թօթափած կը լինէին մանջուրական լուծը։

Այժմ էլ յեղափոխականները պահանջում են մանջուրական կայսերական հարստութեան գահընկէցութիւնը, իբրև առաջին պայմանը, որովհետև Չինաստանի գլխին արտաքուստ և ներքուստ տեղացող բոլոր թշուառութիւնների պատճառը համարում են մանջուրական կայսերական հարստութիւնը։

Չինական յեղափոխական գլխաւոր գործիչներից ամենանշանաւորներն են՝ բժիշկ Սուն-Եատ-Սէնը և Կան-Իւ-Վէյը։ Առաջինը անցել է անգլիական դպրոցը և գործել է գլխաւորապէս արտասահմանում, կազմակերպելով չինական գաղութներում յեղափոխական մարմիններ։ Սուն-Եատ-Սէնը Լօնդօն եղած ժամանակ նենգութեամբ չինական խուզարկու ագենտների կողմից տարուեց չինական դեսպանատուն և բանտարկուեց, սակայն բախտի բերմունքով և շնորհիւ անգլիական րեպօրտեօրների եռանդի և լրագրութեան մէջ բարձրացրած աղմուկի, անգլիական ոստիկանութիւնը միջամտեց, խուզարկեց չինական դեսպանատունը և ազատեց բանտարկեալին, որին բռնելու համար չինական կառավարութիւնը ամեն կողմ խուզարկուներ էր ուղարկել և մեծ գումար խոստացել։ Եթէ չազատուէր, նրան Չինաստանում, իբրև քաղաքական յանցաւորի, պէտք է կենդանի մաս մաս կտրատէին։

Երբ Սուն-Եատ-Սէնին Եւրոպայում հարցրին, թէ ինչ բա-

նը նրան յեղափոխական դարձրեց, նա պատասխանեց. «Երբ ես տեսայ, թէ ինչպիսի չարչարանքների են ենթարկում քաղաքական յանցաւորներին, վճռեցի դառնալ յեղափոխական»։

Այսպէս թէ այնպէս միահեծանութեան լուծը Չինաստանում վերջացած կարելի է համարել։ Այժմ պայքար են մղում սահմանադրականներն ու հասարակապետականները պետական կազմի որոշման համար։ Պետական գործիչ Իւանշիկայն առաջարկում է լայն սահմանադրական միապետութիւն այժմեան կայսերական հարստութիւնը գլուխ ունենալով, իսկ այլ սահմանադրական միապետականները առաջարկում են չինական կայսերական տոհմ։ Հասարակապետականները բացարձակ պահանջում են հասարակապետութիւն և նախագահի ընտրութիւն, միևնոյն ժամանակ մեղադրելով Իւանշիկային երկդիմութեան մէջ, որ նա գահը իր համար է պատրաստում ապագայի համար։

Շատ մեծ և կարևոր նշանակութիւն ունի այն հանգամանքը, թէ ինչպէս կը վերաբերուեն շահագրգռուած մեծ պետութիւնները նորակազմ չինական պետութեան։

Այժմ նրանք ամեն կերպ համոզում են հաշտուել և վերջ տալ կռուին։

Ժամանակաւոր զինադադար է յայտարարուած և երկու կողմերն էլ ներկայումս բանակցում են։ Ի հարկէ շատ հետաքրքրական է լինելու բանակցութեան հետևանքը՝ սահմանադրական միապետութի՞ւն թէ՞ հասարակապետութիւն։

Ա. Ն.

# ՊՕԼ ԼԱՖԱՐԳ

Վերջերս Պարիզից մի հեռագիր գուժեց այս նշանաւոր մարդու ինքնամահացման չարագուշակ լուրը։

69 տարեկան հասակում խորին գիտակցութեամբ կտրեց իր կեանքի թելը Պօլ Լաֆարգը։ Նրա հետ միասին ինքնասպան եղաւ նաև նրա կինը, որ այնքան նուիրուած է եղել իր ամուսնուն։ Առանց տատանուելու, առանց մի րոպէ կանգնելու, նըրանք ներարկում են իրանց կաշու տակ կապտաթթու թոյնը (синильная кислота) և խաղաղ կերպով վերջ դնում իրանց կեանքին։

Գիտակցելով որ զառամութիւնը իր հետ բերելու է մի շարք ծանր հետևանքներ, Պօլ Լաֆարգը իր վերջին նամակով յայտնում է, թէ քայլը անում է ֆիզիքական և մտաւոր թուլանումից խուսափելու համար։ Նա մեռնում է, ունենալով խորին հաւատ, որ նրա համար նուիրական եղած գործը վերջ ի վերջոյ ամենուրեք կը տիրապետի, և նամակի վերջում նա ոգևորութեամբ բացագանչում է. «կեցցէ կօլլեկտիվիզմը, կեցցէ միջազգային սօցիալիզմը»։

Ողբերգութեան շեմքին կանգնած այս հերոսի վերջին խօսքերը արդէն ապացուցանում են, թէ որպիսի ջերմ ու խանդոտ մարտիկ է եղել կեանքի բազմերանգ ժխորում այդ բազմավաստակ գինուորը։

Պօլ Լաֆարգի քաղաքական գործունէութիւնը սկսվում է 60-ական թուականների կիսերին։ Ֆրանսիայի 2-դ կայսրութեան կատաղի հակառակորդ, ջերմ հանրապետական՝ նա մի առանձին եռանդով ագիտացիա է մղում Պարիզի ուսանողական շրջաններում, որի համար և Պարիզի բժշկական ֆակուլտետից նրան հեռացնում են։ Լաֆարգը գնում է Լօնդօն, որտեղ է ծանօթանում է Կարլ Մարքսի հետ։ Նա մօտենում է «Կապիտալի»

հեղինակի հետ, դառնում է նրա ընտանիքի անդամներից մէկը և ամուսնանում Մարքսի աղջկայ հետ։

Ահա այստեղ է, որ նա վերջնականապէս ազատվում է պրուդօնական տենդենցներից և դառնում գիտական սօցիալիզմի առաջաւոր պրօպագանդիստներից մէկը։ Լօնդօնում նա աւարտում է իր ուսումը և վերադառնում է Պարիզ (որպէս անդամ «Ինտերնացիօնալի» գլխաւոր խորհրդի), որտեղ այդ միջոցին պատմական խոշոր դէպքեր էին կատարվում։ Մի տարի յետոյ Կօմմունան յանձնարարում է նրան հարաւ-արևմտեան Ֆրանսիայում ապստամբութեան դրօշը պարզելու գործը։ Սակայն Կօմմունայի ոչնչացումն ու քաղաքական ընկալցիայի խրատութիւնները հարկադրում են նրան անցնել Սպանիա։ Այստեղ ևս նա հանգիստ չէ մնում, և սօցիալիստական գաղափարներ եռանդով արծարծելուն համար նրան սկսում են հալածել, և նա ստիպուած փախչում է Պօրտուգալիա։ 1872 թ. նա գնում է Հաագայում գումարուած՝ «Ինտերնացիօնալի» կօնֆէրէնցիային, որտեղ տենդային բանակռիւ է մղում Բակունինի անարխիզմի դէմ։ Այնուհետև գնում է կրկին Լօնդօն, որտեղ՝ արտաքին ծանր պայմանների մէջ՝ ամբողջովին անձնատուր է լինում գրական աշխատանքների։ 1882 թ. ամնիստիայի զօրութեամբ Լաֆարգը հնարաւորութիւն է ստանում վերադառնալու Ֆրանսիա, որտեղ յայտնի սօցիալիստ Գէդի հետ ձեռնարկում է սօցիալ-դեմօկրատական կուսակցութեան կազմակերպութեան գործին։ Գէդի պրօպագանդան լինում է բանաւոր, մինչդեռ Լաֆարգը միևնոյն գործը կատարում է գրական խօսքով։ Մարքսի գաղափարները ջերմագին կերպով պաշտպանում ու արծարծում է Լաֆարգը այն ժամանակուայ մամուլի մէջ, ինչպէս օրինակ՝ «Egalité», «Citoyen», ապա հիմնում է «Socialiste» թերթը և գրում մատչելի բրօշիւրներ և կոչեր։

1891 թ. Լաֆարգը Լիլում ընտրվում է պարլամենտի անդամ, և նրա հիմնած բանուորական կուսակցութիւնը սկսում է աստիճանաբար աւելի մեծ քայլեր անել։ Սօցիալիզմի ագիտացիօն գրականութեան մէջ Պօլ Լաֆարգը ունի իր արտօնեալ առանձնայատուկ տեղը։ Նրա «Ծուլութեան իրաւունքը», «Վաճառուած ախորժակը», «Երկրպագութիւն ոսկուն» գրուածքները գրեթէ բոլոր լեզուներով թարգմանուած ու անհագին քանակութեամբ տարածուած են։ Նա գրել է բազմազան խնդիրների մասին. գրել է փիլիսոփայական պրօբլէմների, բարեկործութեան պատ-

մութեան, կանանց հարցի, տրեստների և այլ հարցերի մասին և ամէն տեղ որոշակի ընդգծում է պատմութեան մատերիալիստական ըմբռնման սկզբունքները։ Եւ սօցիալիզմը, գիտական սօցիալիզմը, յանձին Պօլ Լաֆարգի ունեցել է իր քաջամարտիկ զինուորներից այնպիսին, որը ուսանողական նստարանից մինչև 69 տարեկան հասակը եղել է հաւատարիմ պաշտպան սեփականազուրկ մասսայի շահերի։

Ս.

---

Խմբագիր-հրատարակիչ Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

Տպարան «Է Պ Օ Խ Ա», Մուղէյսկի պեր. № 8.

# ՆՈՐ ՍՏԱՑՈՒԱԾ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ

---

1. Սալբի, *ազգ. վիպասանութիւն պարսկահայոց կեանքից, Րաֆֆիի, հատոր Ա., Վիէննա, 1911 թ.. էջ 534, գ. 3 ր.։*
2. Անձկութեան ժամեր, *նուէր վաղաթառամ Խրիստինէ Մ. Խանդամիրեանի՝ վշտահար ծնողից. Թիֆլ., 1911 թ., էջ 64։*
3. Ձիւն, *դրամա 4 արարուածով, Ստ. Պշիբըշեվսկիի, թարգմ. Զ. Տէր-Գրիգորեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 62, գ. 40 կ.։*
4. Дѣятельностъ западно-европейскихъ городскихъ управленій въ области соціалной жизни, *Ա. Յ. Խատիսեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 53։*
5. Էմինեան ազգագրական ժողովածու, *հատոր Ը. (Հայ բարբառագիտութիւն—ուրուագիծ և դասաւորութիւն հայ բարբառների), գրեց Հր. Աճառեան, Մոսկվա, 1911 թ., էջ 292, գ. 1 ր. 25 կ (3 ֆր.)։*
6. Կենսագրութիւն Գէորգ արքեպ. *Սուրէնեանցի, Ս. ք. Իփակեանցի, Թիֆլիս, 1911 թ., էջ 77։*
7. Տասներկու քոյր, *Կարլ Էվալդի, թարգմ. Կար. Մերիանեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 20, ձրի յաւելուած «Հասկեր» ամսագրի։*
8. *«1912* г. армяно-григоріанскій календаръ», *պատկերազարդ, Ս. ք. Տէր-Յովհաննիսեանցի, էջ 126, գ. 20 կ.։*
9. Թէ ինչպէս են տարածվում սերմերը, *Նիկ. Սարգսեանի, Թիֆլիս. 1911 թ., էջ 32, ձրի յաւելուած «Հասկեր» ամսագրի։*
10. Օրմանեանը գրպարտութեան ցանցերում, *Ս. Չէրէզեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 169, գ. 30 կ.։*
11. Մաղաքիա արքեպ. Օրմանեան եւ կաթողիկոսական ընտրութիւն, *Գար. վ. Յովսէփեանի, Թիֆլիս, 1911 թ., էջ 54, գ. 10 կ.։*
12. Կոչնակ *շաբաթաթերթի № № 41 և 42, Նիւ-Եօրկ, 1911 թ.։*
13. Տաճար *շաբաթաթերթի № № 36, 37, 38 և 39, Կ. Պօլիս, 1911 թ.։*
14. Աղբիւր *ամսագրի № № 10 և 11, Թիֆլիս, 1911 թ.։*
15: Առողջապահ *հանդէսի № 6 (հոկտ.), Թիֆլիս, 1911 թ.։*
16. Աղբիւրի ակունքը, *երրորդ պրակ, էջ 49—64, Թիֆլիս, 1911 թ.։*
17. Հասկեր *ամսագրի № № 10 և 11, Թիֆլիս, 1911 թ.։*
18. Տարազ *հանդէսի № № 10 և 11, Թիֆլիս, 1911 թ.։*
19. Արարատ *ամսագրի № № 9, 10 և 11, Էջմիածին, 1911 թ.։*
20. Հանդէս Ամսօրեայ *հանդէսի № 10—11-ը, Վիէննա, 1911 թ.։*
21. Armenia *ամսագրի նոյեմբերի համարը, 1911 թ , Նիւ-Եօրկ։*

## «ԱՐՕՐԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ՄԷՋ ԾԱԽՎՈՒՄ ԵՆ

*Հ. Առաքելեանի ինքնուրոյն եւ թարգմանական աշխատութիւնները եւ «Մեսրոբեան Հանրամատչելի Գրադարանի» հրատարակութիւնները.*

1. Անդերսենի Հեքիաթները, *թարգմ. Տ. Զաւէնի, գ.* — 50 կ.
2. Արբեցողութեան դէմ, *բրօշիւր, գինը* . . — 15 կ.
3. Հայկական Տպագրութիւն, *Լէօի, գ.* . . 1 ր. 20 կ.
4. Ջհուդ-Քուշան, *Շահրիարի, մեծ վէպ Պարսկաստանի կեանքից, գ.* . . 1 ր. —
5. Ուրանիա, *աստղագիտական մեծ վէպ Ֆլամմարիոնի, թարգման. Հ. Առաքելեանի, գ.* . 1 ր. 50 կ.
6. Քսան Վէպիկներ, *Գի դը Մոպասանի, թարգմ. Հ. Առաքելեանի, գ.* . . . 1 ր. —
7. Անգլիայի հասար. եւ քաղաքական կեանքը, *գ.* — 15 կ.
8. Հասարակութեան Նեցուկները, *դրամա Հ. Իբսէնի (պատկերով), թարգմ. Լ. Բաբայեանի* . — 50 կ.
9. Դէպի Արարատ, *Արշ. Մխիթարեանի, գ.* . — 40 կ.
10. Մի ամիս Արեւելքում, *Հ. Առաքելեանի, գ.* . — 40 կ.
11. Նոր Կեանքի Շեմքում, *դրամատ. էտիւդ Ա. Ք.* — 40 կ.
12. Միլտոնի կեանքը, *կազմեց Հ. Առաքելեան, գ.* . — 25 կ.
13. Գալիլէյի կեանքը, *կազմեց Հ. Ա., գ.* . . — 25 կ.
14. Ձեռնարկ *Տրամաբ., Հոգեբ., Բանահիւսութեան, կազմեց Հ. Առաքելեան, գինը.* . . — 50 կ.
15. Տասն-երկու Պատմուածքներ, *Շահրիարի, գինը.* — 50 կ.

***Բոլոր 15 գրքերը միասին գնողներին կը լինի 25°/₀ զիջում.***

ԲԱՑՈՒԱԾ Է ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

ՆԵՐԿԱՅ 1912 ԹՈՒԱԿԱՆԻ

III ՏԱՐԻ „ԱՐՕՐ" III ՏԱՐԻ

# ԸՆԴՀԱՆՈՒՐ-ԳՐԱԿԱՆ, ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ, ԳԻՏԱԿԱՆ, ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԵՒ ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ

## Ա Մ Ս Ա Գ Ի Ր

«ԱՐՕՐԸ» հրատարակվում է Թիֆլիսում խմբագրութեամբ Հ. Առաքելեանի և աշխատակցութեամբ ռուսահայ, թիւրքահայ և պարսկահայ գրողների։

«ԱՐՕՐԻՆ» աշխատակցում են՝

Աթանասեան Ա., Ալպօյաճեան Ա., բժշկ. Աղասարեան Բ., Ա[illegible]րուշան, բժշկ. Արծրունի Վ., Առաքելեան Արշակ, Աթաբէգեան Մ., Բաբգէն եպիսկոպոս Կիւլէսէրեան, Բաշալեան Լևոն, Բաշինջաղեան Գ., Բաբայեան Խ., Գասպարեան Յարութիւն, դօկտոր Գրէնֆիլդ Ջէմս, Դանիէլեան Լ., Դը-Գուբերնատիս Անջէլլօ (սենատոր, իտալական պրոֆէսոր), Եզեկեան Ա., Եսայեան Ս., Էմմանուէլ Ք. Նազարեան., Թէքէեան Վ., բժշկ. Թիրեաքեան Յարութիւն խան, Խանազատ Ռ., Խուրշիդ, Կալիսա, Կրասիլնիկեան Կ., Ղուլեան Ա., Մալխասեան Ս., Մալխազեան Ա., Մակլէր Ֆ. (ֆրանսիացի հայագէտ), Մեսրոպ ք. Մելեան, Յարութիւնեան Ի., Նաթանեան Միք., Նազարէթեան Ա., Նամալեան, բժշկ. Շահբազեան Ա., բժշկ. Շխեան Ա., Շահրիար, Շաւարշ, Ջալխուշեան Գ., Ջախմախսազեան Յ., Սարուխան Ա., Սուրխաթեան, Սամուէլեան Խ., Սպենդիարեան Յ., պրոֆէսոր Վեսելովսկի Ի., Տէր-Մինասեան Ե., Ռոֆֆոր Ստ., Քալանթար Ա.։

«Արօրի» բաժանորդագինն է «Մշակի» բաժանորդների համար 4 ր.։ Ոչ-բաժանորդները վճարում են 2 ր. աւելի։

Դրամ և թղթակցութիւն ուղարկել այս հասցէով՝

Тифлисъ, редакція журнала „АРОРЪ".

Tiflis, Rédaction de la revue arménienne «Aror».

Թիֆլիս, «Արօր» ամսագրի խմբագրութիւն

Խմբագիր-հրատարակիչ՝ Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

# ԱՐՕՐ

## ՄԻԱՄՍԵԱՅ ՀԱՆԴԷՍ

ԸՆԴՀԱՆՈՒՐ ԳՐԱԿԱՆ, ԳԻՏԱԿԱՆ-ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ
ԵՒ ԻՐԱՒԱԲԱՆԱԿԱՆ.

II ՏԱՐԻ II ՏԱՐԻ

ԴԵԿՏԵՄԲԵՐ

№ 12

1911

ԹԻՖԼԻՍ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Գրական
ԳԻՏԱԿԱՆ
Հասարակական-
ՔԱՂԱՔԱԿԱՆ
խաղաղասիր.
ՀԱՆԴԷՍ

# ԱՐՕՐ

ԵՐԿՐՈՐԴ տարի
ԹԻՖԼԻՍ
1911 Թ.
ԴԵԿՏԵՄԲԵՐ
№ 12

# ՍՏԻՊԵՑԻՆ*)

(Պատմուածք իրական կեանքից)

## IV

Այդ օրից մի շաբաթ անցած՝ Մառալն արդէն Անդրէասենց այգումն էր։ Նրա հետն էր և ընտանիքը։ Մառալին տրուած էր ամեն յարմարութիւն։ Նա գոհ էր, մանաւանդ որ բնակարանը շատ յարմար էր և իր համար էլ առանձին օգնական ունէր։ Մառալը կենդանացաւ։ Նորից սկսեց ապրել։ Մոռացաւ մի կտոր հացի համար իր կրած զրկանքներն և սրտանց նուիրուեց այգու գործին։ Նա կանուխ առաւօտից մտնում էր այգու մէջ, վերադառնում էր բնակարան ճաշելու միայն և երեկոյեան թէյի ժամանակ, որ սկզբում վայելում էր իր կնոջ և միակի զաւակ հետ, իսկ վերջը նրանց ընկերանում էր և Անդրէասը, երբ այգումն էր լինում։

Գոհ էր Նախշունը (այդպէս էր կոչվում Մառալի երիտասարդ կինը)։ Գոհ էր նախ՝ որ առատութեան մէջ էր և երկրորդ՝ միջոց ունէր ազատ տեսնուելու Անդրէասի հետ։ Այդ երկուսի միջև արդէն մի մտերիմ կապակցութիւն կար, որի զարգանալուն աւելի և աւելի նպաստե-

*) «Արօր» № 10—11.

ցին այգու պայմանները՝ գեղեցիկ բնութեան խորհրդաւորութիւնը, դիտող աչքերի բացակայութիւնը և ամուսնու միամիտ վերաբերմունքը։

Սակայն Մառալի հոգու հանգստութիւնը երկար չտեւեց։

Անկամայից նա նկատեց, որ վերջին անգամները Նախշունի մէջ կոկուելու, հագնուելու տենչ է առաջացել. կարծես մէկին դուր գալ է ուզում։ Մառալը մի երկու անգամ նկատեց կնոջը Անդրէասի հետ այգու բակում խօսելիս. այդ նրան խիստ անախորժ թուաց։ Մի երկու անգամ էլ տեսաւ Անդրէասին իրանց բնակարանից դուրս գալիս. դարձեալ նեղացաւ և դեռ ոչ մի ցոյց չարեց։ Իրաւունք էլ չունէր, քանի որ Անդրէասը ընկերաբար էր վարվում և դէպի ինքը շատ լաւ տրամադրութիւն էր ցոյց տալիս ու ամեն յարմարութիւն ստեղծում։ Մառալի պահանջած՝ այգուն վերաբերեալ նորանոր գործիքները ուրախութեամբ գնում էր։ Նրա ուզած ժամանակ մշակներ էր աւելացում։ Ամենայն օր համարեա նրա համար քաղաքից ձուկ ու միս էր բերում։ Այդպիսի առատութիւն միւս այգետէրերի մօտ չտեսնուած բան էր։ Այդ բոլորից բացի՝ Անդրէասը ամենայն սիրով երբեմն օգնում էր Մառալի այգու աշխատանքներին։

Սակայն մի դէպք բացեց միամիտ մշակի աչքերը։ Աշխատելը վերջացնելուց յետոյ՝ Մառալը մի երեկոյ մտաւ բնակարան. կինը այնտեղ չէր։ Նա խիստ ծարաւ էր, թէյ էր ցանկանում, բայց թէյը պատրաստ չգտաւ։ Վիրաւոր գազանի նման Մառալը մռմռալով դուրս եկաւ սենեակից։ Նրան պատահեց երեխան։

—Աղա՛, մայրդ ո՞ւր է։

—Նա պարտիզումն է,—ասաց ու բզզանին զարկելով՝ առաջ վազեց։

—Ի՞նչ է անում այնտեղ։

Երեխան՝ զբաղուած խաղով՝ հօր հարցը չլսեց։

Արդէն ծառերի տակ բաւական մթնել էր, երբ

Մառայը պարտէզ մտաւ։ Նա սաղարթախիտ ծառերի տակ երկու ստուեր նկատեց։ Նախշունն ու Անդրէասը իրար խիստ մօտ նստած՝ քչփչում էին։ Մառային նկատելով, նրանք կայծակի արագութեամբ հեռացան իրարից, և Նախշունը սկսեց թէյի պատրաստութիւն տեսնել։ Պարտիզի սեղանի վրա արդէն խշշում էր ինքնաեռը։ Մառայը այլևս չկարողացաւ իր զայրոյթը ծածկել։

—Ի՞նչ ես անում այստեղ։

—Քեզ համար թէյ եմ պատրաստում։

—Սո՛ւտ ես ասում,—մի աստիճան ձայնը բարձրացնելով, ասաց Մառայը։

—Ի՞նչ սուտի բան կայ, ինքնաեռը չե՞ս տեսնում։

—Ումի՞ց հարցրիր, որ թէյը այստե՞ղ ես պատրաստում։ Այդ ի՞նչ նոր բան է։

—Մի՛ նեղացիր, արի՛, նստի՛ր։ Ես խնդրեցի, որ այստեղ պատրաստէ,—վրա բերեց Անդրէասը։—Այստեղ լաւ է, գեղեցիկ ծաղիկներ, անուշ հոտ, մաքուր օդ․ արի՛, արի՛, յոգնած կը լինես․ արի, նստի՛ր, թէյ վայելի՛ր։

Օտար մարդու ներկայութիւնն ու իր պատիւը այս անգամ ևս ստիպեցին Մառային լռել։ Նա քթի տակ մռմռալով՝ նստեց, մի խոր հոգւոց հանեց, բացագանչելով՝ «Անիծուի չքաւոր մարդու բաղդը», և այնուհետև մի բառ անգամ չարտասանեց, այլ անյագաբար ներս էր կլանում տաք-տաք թէյը, կարծես դրանով կամենալով հանգցնել ներսի կրակը, որ վառում էր Մառայի մէջ հետզհետէ զարթնող խանդը։

Անդրէասը իրան անյարմար դրութեան մէջ զգալով՝ մի քանի կցկտուր խօսքերից յետոյ «բարի գիշեր» ասաց ու, թռչելով արդէն լծուած սայլակի մէջ, քաղաք գնաց։

Այդ գիշեր երկու ամուսինների միջև բաւականին լուրջ խօսակցութիւն տեղի ունեցաւ։ Բանը վերջացաւ նրանով, որ Նախշունը խոստացաւ Անդրէասի հետ այլևս չպատահել Մառայի բացակայութեան ժամանակ։

Բայց ո՞ր սիրող կինը կարող է ծածկել իր ներքինը։ Եթէ ինն դէպքում սառնասիրտ ձևանայ դէպ իր սրտի առարկան, տասներորդ դէպքում՝ իր մի անզգոյշ քայլով, վարմունքով ցոյց կը տայ, որ նրա սիրտը ուրիշին է պատկանում և այն ուրիշը իր համար ամեն ինչ է՝ և՛ կեանք, և՛ ուրախութիւն, և՛ երջանկութիւն։ Թո՛ղ այդ երջանկութիւնը վայրկենական լինի, թո՛ղ ամենաչնչին դէպքում արտայայտուի, այդ ողջ մէկ է։ Իսկական սիրոյ քաղցրութիւնը ակնթարթների մէջ է։

Եւ այդպէս՝ թէպէտ Նախշունը ազնիւ խօսք տուեց Մառալին՝ այլևս չպատահել Անդրէասի հետ, բայց այդ անկարելի էր։ Նախշունը նոր սկսում էր ապրել, նոր էր հասկանում սիրոյ քաղցրութիւնը։ Նա իր ամուսնութեան օրից համարեա ամուսին չէր տեսել. Նա կարօտ էր գուրգուրանքների, սիրուելու, որովհետև Մառալը պսակի առաջին օրերից սկսած՝ հաց ճարելու համար շաբաթներով, ամիսներով այգիներումն էր անց կացնում իր կեանքը։ Դրա վրայ աւելացնենք և նրա վերջին տարիների թշուառ ու դառն կեանքը, մշակի ծանր աշխատանքը, անկանոն սննդառութիւնը և միատեսակ, տաղտկալի պարապմունքը. այդ բոլորը Մառալից խլել էին նրա թարմութիւնը, ոյժն ու կորովը։ Նա արդէն իր կեանքի արևմուտքն էր դիմում, այլևս վաղուան կեանքով չէր ապրում, վաղուայ օրը նրան ոչինչ չէր խոստանում. կեանքից այլևս կարծես սպասելիք չունէր։

Նախշունը դրա հակառակն էր։ Նա վարդի նման նոր էր բացվում։ Կանացի ամենակրակոտ շրջանումն էր, և այդ կրակը աւելի բորբոքեց Անդրէասը, որ իր աշխոյժ բնաւորութիւնով, կենսուրախ սրտով և գեղեցիկ արտաքինով կարող էր Նախշունի հետ ամենայարմար զոյգ լինել։ Մի խօսքով՝ Անդրէասը Նախշունին կարող էր տալ այն ամենը, ինչ որ նրան պակասում էր։ Եւ Նախշունը դրանով գոհ կը լինէր, բայց նրան արգելվում էր կեանքի պարգևը վայելել։ Եւ որովհետև դա ան-

պատրաստ էր ու կամազուրկ՝ ամուսնուն դիմադրելու, ուստի բաւականացաւ դիմելով թոյլերի ու անզօրների զէնքին, այսինքն՝ կեղծել ու խաբել ամուսնուն։

Բայց այդ՝ Մառալից գաղտնի չմնաց։ Նա նկատում էր, որ կինը իր հետ սակաւախօս է դարձել, թախծում է, դէպի ինքը աւելի անտարբեր է։ Այն ինչ՝ երբ Անդրէասի շրջանումն էր լինում, ուրախ էր, վառվռուն, խօսուն, շարժուն։ Այդ րոպէներին Նախշունի իւրաքանչիւր շարժուածքի մէջ մի առանձին ներշնչումն էր երևում։ Թէ ճաշի, թէ թէյի ժամանակ ամենալաւ պատառը, ամենաշատ բաժինը Անդրէասի առաջն էր դնում, նրան էր սպասաւորում, որպէս թէ իր ամուսնու տիրոջը, բայց Մառալի աչքից չէր խուսափում և այն, որ դա տիրոջ և սպասաւորի յարաբերութիւն չէ, այլ աւելի մտերիմ կապակցութեան արդիւնք։ Սրանից բացի՝ Մառալը նկատում էր ստէպ, որ երբ Անդրէասը երեկոները սայլով քաղաք էր ուղևորվում, Նախշունը իր հայեացքներով ճանապարհ էր դնում նրան կամ նրա գնալուց փոքր անցած՝ փողոց էր դուրս գալիս և, այգու դռանը կանգնած, երկար նայում էր դէպի այն կողմը, ուր սլանում էր Անդրէասի սայլակը։

Մի անգամ մշակների ալիւրը պակասեց։ Միասին ճաշելուց յետոյ Անդրէասը ասաց Մառալին։

—Միչ հանգստացէ՛ր, յետոյ սայլը լծէ՛ր, գնա՛ քաղաք։ Ալիւր չունենք. քսան պուդ ալիւր առ ու բե՛ր։

Մառալի գլխին կարծես երկրագունդը փուլ եկաւ։ Նրա դէմքը թթուեց և ջղային ցնցումն անցաւ նրա ամբողջ մարմնով. սակայն զսպեց իրան։ Տիրոջ կարգադրութիւնից խոյս տալ անկարելի էր, մանաւանդ որ ալիւր գնելը նրա պարտաւորութիւններից մէկն էր. ուստի առանց ժամանակ կորցնելու Մառալը լծեց սայլը և շտապեց քաղաք, երեկոյեան գոնէ ուշ՝ այգի վերադառնալու մտքով։ Սակայն այգու հեռաւորութիւնը, շուկայում պատրաստ ալիւր

չգտնելը Մառալին արգելք եղաւ նոյն երեկոյ այգի վերադառնալ։ Նա քաղաքում գիշերեց։ Թէ այդ գիշերը ինչպէս անց կացրեց խանդոտութիւնից տառապող Մառալը, այդ միայն ինքն իմացաւ։ Առաւօտեան խիստ կանուխ շուկայ դուրս եկաւ, հէնց այն րոպէին, երբ լեռնականները մի քանի սայլ ալիւր էին քշում դէպի մեծ շուկան։ Նա այլևս չթողեց նրանց եզներն արձակելու, ալիւրը դիտեց, հաւանեց, գնեց և ալիւրի սայլերը ուղղակի այգի քշել տուեց։ Ինքը դրանցից առաջ շտապեց այգի։

Մշակները դեռ նոր էին նստել առաւօտեան նախաճաշն անելու, երբ Մառալի սայլակը այգու բակը մտաւ։ Նա զարմացմամբ տեսաւ իրան դիմաւորող լեզգի գիշերապահին։

—Հը՛, Մահմադ, ի՞նչ կայ, ինչո՞ւ այսքան ժամանակ դեռ չես քնել։

—Է՜հ, այս գիշեր մի չեղած դէպք պատահեց։ Չե՞ս զարմանում. մեր այգի գողեր էին եկել։

—Գո՞ղեր, —հեգնօրէն ասաց Մառալը։

—Այո՛, գողեր։ Այդ անիծածները այնպէս վրդովել են, որ քունս չէ տանում։ Ովքե՞ր կարող էին լինել։ Մտածում եմ, մտածում, գլուխ եմ կոտրում, բայց չեմ գտնում։

—Կատա՞կ ես անում, Մահմադ, թէ՞ ուղիղն ես ասում։

Բայց, նկատելով որ իր թերահաւատութեամբ վերաբերուելը շարժում է կատաղի լեռնական գիշերապահի բարկութիւնը, խօսքը կտրեց ասելով.

—Դեռ սպասի՛ր, դեռ կարգին պատմի՛ր. ի՞նչպէս իմացար գողերի գալը։

—Ահա՛ թէ ի՞նչպէս իմացայ։ Կէս գիշերը վաղուց անցել էր. ներս մտայ խրճիթ ծխելու։ Երբ նորից դուրս եկայ, դիտեցի աստղերը. նրանք արդէն արևմուտք էին խոնարհուել։ Հասկացայ, որ մօտ է լուսա-

բացը. բայց դուրսը դեռ մութն էր։ Հազիւ մի քայլ էի արել, երբ ականջիս շան հաչոց հասաւ։ Դա մեր հաւատարիմ ալաբայի ձայնն էր։ Նրան արձագանք տուին միւսները, որոնք խմբով վազեցին դէպի շէնքերի ետևի անցքը և մի կատաղի հաչոց բարձրացրին. բայց, զարմանալի է, իսկոյն լռեցին։ Ես էլ, կարծելով որ կատուի կամ մի գիշերային գազանի ետևից են ընկել, անուշադիր թողեցի և խորասուզուեցի մտածմունքներիս մէջ։ Բայց հէնց որ մօտեցայ շինութիւնների ծայրին, մի ինչ-որ ձայն լսեցի։ Ակամայից կանգ առայ։ Լուռ էր։ Ոչինչ չկար։ Հէնց ուզում էի հեռանալ, ձայնը նորից կրկնուեց։ Այս անգամ ինձ թուաց, որ պատուհանի ձայնն է։ Իսկոյն լարեցի ուշադրութիւնս և ուսիցս հրացանը իջեցրի։ Այո, չէի սխալուել, ճիշտ որ պատուհանի ձայն էր, որ լսվում էր ձեր բնակարանի կողմից։ Սրան հետևեցին ոտնաձայներ։ «Հէյ հէյ... ո՞վ է այնտեղ...» ձայն տուեցի մթութեան մէջ։ Դրան հետևեց փակուող թէ բացուող պատուհանի ճռնչիւնը և հեռացող ոտնաձայներ։ Այլ ևս չկասկածելով մարդու ներկայութիւնը, նորից ձայն տուի. պատասխան չստացայ։ Իսկոյն հրացանիս կոթը սեղմեցի կրծքիս, քաշեցի կայծահանը։ Լսուեց հրացանիս խուլ որոտը, շների ողբաձայն ոռնոցը, որոնք արձագանք տուին այգիների հեռաւոր տարածութեան մէջ, և կրկին տիրեց լռութիւն։ Շներին իսկոյն հաւաքեցի շուրջս և դիմեցի պատուհանների մօտ։ Ոչ ոք չկար։ Ձեր բնակարանի պատուհանները կողպած էին. ներսից ձայն չէր լսվում։ Լուցկի վառեցի հետքերը դիտելու, և ի՞նչ տեսայ. ոտքերի և արեան հետքեր գետնի վրայ։ Ուրեմն գնդակս զուր չէր անցել։ Ուզեցի արեան հետքով գնալ, բայց նա ընդհատվում էր։ Եւ ահա լուսաբացից մինչև այժմ այս ու այն կողմն եմ ընկնում, որոնում եմ, որ գոնէ մի հետք գտնեմ, բայց չեմ կարողանում։

—Լաւ,—ասաց Մառալը մտահոգութեամբ.—գնա,

հանգստացի՛ր, յետոյ կը խօսենք.—Նորից աւելացրեց.—սամ խնդրեմ, մի՞թէ հրացանիդ ձայնի վրայ մեր մշակներից ոչ մէկը չզարթնեց, քեզ օգնութեան չհասաւ:

—Ոչ ոք: Մինչև անգամ Անդրէաս աղան էլ տնից դուրս չեկաւ:

—Ի՞նչպէս. Անդրէաս աղա՞ն,—զարմանքն ու զայրոյթը զսպելով հարցրեց Մառալը.—մի՞թէ աղան գիշերը այգումն էր:

—Այո, դու չվերադարձար, նա էլ այգին առանց հսկողութեան չթողնելու համար գիշերը այստեղ մնաց:

Մառալը գունատուեց. Նրա ծնկները թուլացան. և նա անպատճառ կընկնէր, եթէ պահապանի ներկայութիւնը չլինէր: Պատուի զգացմունքը ստիպեց Մառալին՝ իր վերջին ոյժերը ժողովել՝ պահապանից գաղելու իր ներքին յուզմունքն ու տանջանքները, և այլ ևս անկարող լինելով նրա հետ խօսակցութիւնը շարունակել, Մառալը մի քանի կցկտուր խօսքերով արձակեց պահապանին և ինքը շտապեց դէպի արկածի տեղը:

Բակի երկարութեամբ իրար կից ձգվում էին մի շարք շէնքեր—գինու մեծ պահեստը, մշակների կացարանը և ծայրին՝ Մառալի բնակարանը: Այդ շէնքերի ետևի կողմը դէպի փողոց էր նայում: Փողոցն ու շէնքերը իրարից անջատում էր հոսող առուն, որի ափին բուսել էին հաստաբուն ուռենիներ և բարդիներ: Այդ ծառերը իրանց թաւ և լայնարձակ ճղներով ծածկում էին ամբողջ շինութիւնը և այդ շէնքերի ետևի անցքը դժուարանցանելի էին դարձնում: Մառալը մտաւ այդ նեղ անցքը: Նա գլուխը կախել էր դէպի կուրծքը, իսկ բազմահոգ դէմքին տանջանքներ էին դրոշմուած: Զայրոյթից ու դժգոհութիւնից նա անգիտակցաբար սեղմում էր իր բռունցքները, կարծես մէկի կոկորդից բռնած՝ խեղդել էր ուզում: Որոշ տարածութիւն անցնելուց յետոյ՝ Մառալը իր այրուող աչքերը թեքեց դէպի գետին և մի թանկագին իր կորցրած մարդու նման մի

ինչ-որ բան էր որոնում այնտեղ։ Որքան մօտենում էր իր բնակարանի ետևի պատուհաններին, այնքան նրա քիքերը արագ էին շարժվում, իսկ սիրտը այնպէս էր բաբախում, որ կարծես տեղից դուրս թռչել էր կամենում։ Մառալը խոնաւ գետնի վրայ յանկարծ հետքեր նշմարեց։ Պարզ երևում էր, որ դրանք կօշիկների հետքեր էին, որոնք սկսումէին ուղիղ իրանց պատուհանի մօտից և գնալով անյայտանում էին բակի կողմում։ Նշմարվում էին նոյնպէս չորացած արիւնի մի երկու աննշան բծեր։ Մառալը դառն հառաչանք արձակեց և անծայր դժգոհութիւնից ու ծով վշտերից երերուելով՝ յենուեց պատին։ Րօպէաբար սառն քրտինքը ծածկեց նրա գունատ, կնճռոտուած ճակատը։ Նրա նկատած հետքերը պարզում էին գողի ով լինելը։ Եթէ այդ գիշերային այցելուն նօղայ կամ լեզգի լինէր, նրա թողած հետքերը այլ կը լինէին, որովհետև նրանք չուստեր են հագնում։

«Ո՛չ. կասկած չկայ. դա նա է։ Այդ՝ Անդրէասի կօշիկների հետքերն են։ Բայց մի՞թէ կինս մինչև այդ աստիճան թոյլ կը տար իրան։ Լա՛ւ. ասենք Անդրէասը գիշերը կնոջս մօտն է եղել. ի՞նչ կարիք ունէր պատուհանից դուրս գալու։ Ա՜յ անխելք,—ձեռքը գլխին զարկելով բացագանչեց.—Նոր եմ հասկանում, որ նա խուսափել է գիշերապահից. նա ուզեցել է աննկատելի մնալ։ Ա՜յ Աստուած քանդի ձեր տունը, չա՛ր մարդիկ։ Դժոխքի կրակն այրի ձեր լեարդն ու թոքը, ինչպէս որ իմ ներսն է այրվում։ Էլ ինչո՞ւ եմ ապրում, էլ ինչո՞ւ եմ գլխարկ ծածկում։ Այսքա՜ն տանջանք, այսքա՜ն անպատուութիւն, այն էլ մի կտոր չոր հացի համար, չէ՛, չեմ տանի։ Բաւական է վերջապէս. համբերութիւնն էլ իր տեղն ու սահմանն ունի։ Զուր են կարծում, որ մշակ մարդը անխօս քար է, անկամք անասուն, որին կարելի է ամեն ժամանակ և ամեն դէպքում բարձել ու մտրակով քշել։ Ո՛չ. մշակն էլ իր պատիւն ունի. նա

էլ նոյն հպարտ հոգին է, որ հեշտութեամբ չի թոյլ տայ իր սրբութիւններին մօտենալ։ Չէ՛, թոյլ չեմ տայ. այդ անտանելի է վերջապէս. պէտք է այդ տիրոջս լրբութիւններին վերջ դնել»։

Այդպէս մտածեց բորբոքուած Մառալը և իր ոյժերը ժողովելով՝ հաստատուն քայլերով ուղևորուեց դէպի բնակարան։

Կինը սենեակում հաւաք տեղակ էր անում, երբ, աչքերը արիւն լոխած, ներս մտաւ Մառալը։

—Հազիւ եկա՞ր,—կեղծ ժպիտը երեսին դիմեց Նախշունը Մառալին։

—Իբրև թէ ուրախ չէիր, որ ես բացակայ էի։ Ես քո ինչի՞ն եմ պէտք։

—Առանց քեզ՝ գիշերը տարի դարձաւ։ Թէ ինչ վիճակում լուսացրինք, այդ Նրան է յայտնի,—գլուխը վեր բարձրացնելով՝ ասաց Նախշունը։

—Ձայնդ կտրի՛,—յանկարծ գոռաց Մառալը.—բաւական է՝ որքան խաբեցիր, էլ չես խաբի։

—Բաւական չէ կարծես, որքան գողերը սարսափեցրին գիշերը, այժմ գոռում-գոչումովդ դու ես ուզում սարսափ ազդել,—վախեցած ձևանալով՝ ասաց Նախշունը։

—Ի՞նչ գող, ի՞նչ բան։

—Դու դեռ չգիտե՞ս, որ երէկ գիշեր գողեր էին եկել այգի,—միամիտ ձևանալու ձգտումով ամուսնու խօսքը կտրեց Նախշունը։

—Գիտե՛մ. շատ լաւ գիտեմ։ Դու էլ գիտես, թէ ո՛վ էր գողը։ Դա հին գող է, նոր գող չէ. ուստի ասում եմ՝ լաւ լսի՛ր, ա՛յ կին. այսուհետև մեր ոտը այստեղ չպիտի լինի։ Ես որոշել եմ թողնել ծառայութիւնս և այս անիծեալ այգին։ Ոչ, ինչ էլ որ գողանան, ես չեմ թոյլ տայ, որ պատիւս գողանան,—գրգռուած և բարձրաձայն ասաց Մառալը։

—Շատ ժամանակ է՞, որ փորդ կշտացել է. դարձեալ

ուզում ես անգործ ու սոված թափառել։

—Այո, ուզում եմ։ Լաւ է՝ սոված մեռնեմ, քան անպատիւ ապրեմ։

—Իսկ ես չեմ ուզում։

—Ա՛խ, դու չես ուզում. Ես էլ հէնց այդ էի ուզում իմանալ, անարժան, անամօթ կին։

—Բաւական է, ձայնդ քեզ քաշի՛ր։ Ես չեմ կամենում նորից չքաւորութեան մէջ տառապել։ Բաւական է, ինչ որ ջահել օրս, ջահել կեանքս քեզ հետ մաշեցի։

—Ա՛խ դու անիծեալ, լեզուդ էլ ես երկարացրել և համարձակվում ես պատասխանե՞լ. էս րոպէիս փորդ կը թափեմ,—ասաց Մառալը և կատաղութիւնից իրան բոլորովին կորցրած՝ հանեց դաշոյնը, որ միշտ կախ էր նրա գօտուց, և ուզեց հարուածել Նախշունին։

Կինը, զարհուրած, հազիւ կարողացաւ դուրս թռչել սենեակից և, ճչալով, վազեց մշակների բնակարանը օգնութիւն աղերսելու։ Վրդովուած մշակները Մառալի ձեռքից հազիւ խլեցին մերկացած դաշոյնը և հազիւ հանգստացրին նրան։

Անդրէասը այդ օրը այգում չերևաց։ Մառալի վերադարձից յետոյ նա նոյն սայլով քաղաք շտապեց։ Նա չերևաց երկրորդ, երրորդ, չորրորդ օրը, մինչև շաբաթուայ վերջը։ Լսուեց, որ նա մրսել, տկարացել է։ Մինչև անգամ բժիշկ են հրաւիրել։ Մի քանիսն էլ մինչև անգամ նրա ձեռքը փաթթած են տեսել։

Անդրէասի այգի չգալը, մօտակայ այգեքաղի անյետաձգելի նախապատրաստութիւնները և Նախշունի ներողութիւն խնդրելը մի առ ժամանակ յետաձգեցին Մառալի հրաժարուելու մտադրութիւնը իրագործել։ Նա միանգամայն զբաղուեց այգեքաղով։ Մառալը որքան դիւրագրգիռ էր, նոյնքան էլ շուտ էր մոռանում և ներողամիտ էր։ Իր սրտում ներեց և Անդրէասին, մանաւանդ այգեքաղի ժամանակ առէպ իրար հետ շփուելու առիթով։ Եւ այդ շատ էլ դժուար չէր երևում նրա հա-

մար, որովհետև որոշել էր այգին քաղելուց ու թաղելուց յետոյ բոլորովին վերջացնել իր հաշիւները Անդրէասի հետ և վերջնականապէս հեռանալ այգուց։

V

Աշուն էր։ Վաղուց արդէն այգեքաղը վերջացել էր։ Այգիները գեղեցիկ տեսքից զրկուել էին։ Ծառ, թուփ, խաղողի որթեր՝ բոլորը մերկացել էին իրանց կանաչագեղ զարդարանքներից։ Չորացած ճղների վրայ կախուել էին դալուկ, խորշոմած տերևներ, որոնք սառն, աշնանային քամու ամեն մի հարուածից մեծ քանակութեամբ պոկուելով՝ գանգատաւոր շշուկով վարվում էին հեռու՝ ցուրտ, խոնաւ հողի մէջ իրանց գերեզմանը գտնելու։ Այգիներում այդ օրերին վերջին աշխատանքն էր կատարվում։ Ամենքը շտապում էին որթերի աւելորդ մասերը կտրել, գետնի տակ թաղել՝ ձմրան սառնամանիքից պաշտպանելու համար ու այնուհետև քաղաք քաշուել, սպասելով գարնանը երկրի նորից զարթնելուն։ Որթ կտրելու համար հմտութիւն էր հարկաւոր։ Պէտք էր գիտենալ հարկաւոր մասը անհարկաւորից զանազանել, որթի ո՛ր մասը կտել, ո՛րը թողնել. և այդ կտրելուց էր կախուած որթի աջող ընձիւղելը գարնանը և առատ բերք տալը։ Մեր քաղաքում որթ կտրելու առանձին շնորհ ունէին հայ մշակները։ Թէպէտ վերջիններս իրանց հմտութեան պատճառով աւելի էին գնահատվում, քան ռուս, նօղայ ու լեզգի մշակները, բայց դարձեալ շատերը որթ կտրելու համար աշխատում էին հայ մշակներ վարձել։ Դրանում համոզուած էր և Մառալը, ուստի և հայ մշակներ վարձեց։ Հայեր էին վարձուած նաև Անդրէասի հարևան այգում, որի տէրը Անդրէասի նման մի երիտասարդ այգեպան էր. դա Ղոյբաղարենց Տարասն էր։ Երբ մշակները գործը այգում բոլորովին աւարտե-

ցին, Տարասը շաբաթուայ վերջին գիշերը մի խնճոյք կազմեց իր մշակների համար։ Հրաւիրուած էին նաև Անդրէասն ու Մառալը իրանց մշակներով, որոնք Տարասի լաւ ծանօթներն էին։

Քէֆը շատ կենդանի էր անցնում։ Տախտի վրայ փռուած էր կապտագոյն սփռոց։ Նրա շուրջը ծալապատիկ շարուած էին հիւրերը։ Ուտում, խմում էին անհաշիւ։ Խրճիթը թնդում էր խմբական երգերից, ուրախ կատակներից ու քրքիջներից։ Պակաս կենդանութիւն և ուրախութիւն չէր պատճառում սազը, ինչպէս և եղեգնից շինած շուին, որ փոխ առ փոխ նուագում էին մշակները և այդ գուրեկան ձայների տպաւորութեան տակ կատաղի ծափ էին տալիս ու պարում։ Նոր գինին արդէն սկսել էր ազդել հիւրերի վրայ։ Իւրաքանչիւրը իր տեսակի գժութիւն էր անում։ Միայն Մառալն էր, որ իր հասակին վայել լրջութիւն էր պահպանում։ Սակաւախօս էր և սակաւ էլ ուրախանում էր. երեւում էր՝ ինչ-որ մի հոգս աղմկում է Նրա ներսը։

Գիշերից բաւական անցել էր։ Ընդհանուր զուարճութեան միջոցին յանկարծ լսուեց Անդրէասի ձայնը.

—Թամադա՛, թո՛յլ տուր ինձ, գնալ եմ ուզում։

—Անկարելի է, անկարելի,—գոռացին մի քանիսը։

—Քէֆը ինչո՞ւ ես խանգարում,—նկատեցին միւսները։

—Շտրա՛ֆ, շտրա՛ֆ (տուգանք),—գոչեց Թամադան։

—Այո՛, շտրաֆ, շտրաֆ. բերէք կաւէ մեծ գաւաթը,—ձայն տուին ամենքը։

—Մի քանի րոպէով եմ դուրս գալիս. իսկոյն կը դառնամ,—ասաց Անդրէասը։

—Ողջ մէկ է, տեղից վեր կենողը պիտի շտրաֆ խմի։ Թամադա՛, շտրա՛ֆ,—գոռացին ամեն կողմից։

—Լա՛ւ. որ պահանջում էք, կը խմեմ. Թո՛ղ խոտը եզանը սպանի,—ասաց Անդրէասն ու գլխին քաշեց գինով լի գաւաթը։

—Կեցցէս, բրավօ, աֆֆերիմ,—բացագանչութիւններից թնդաց խրճիթը։

—Դէհ, տէր ընդ քեզ, գնա՛, հինգ րոպէ քեզ ժամանակ. շուտ դարձի՛ր,—ասաց թամադան։

—Թոյն էլ լինէր, կը խմէր. գիտենք ո՛ւր է գնում, —քմծիծաղ տալով ասացին մի-երկուսը։

—Բարի աջողութի՛ւն։

—Աստուած գործդ աջողի։

—Գնացած ճանապարհիդ մեռնեմ։

—Անդրէաս ջա՛ն, ինձ էլ տանե՜ս քեզ հետ։

—Դու երիտասարդ, նա երիտասարդ. գնա՛ քէֆ քաշիր։

Այս և սրա նման կատակներով ու ակնարկներով ճանապարհ դրին հիւրերը Անդրէասին, առանց մտածելու որ իրանց իւրաքանչիւր խօսքը սուր երկաթի նման ծակում էր Մառալի սիրտը, գրգռում էր նրա՝ առանց այն էլ վիրաւորուած պատուասիրութիւնը։ Այո, այդ ակնարկների միտքը ըմբռնեց Մառալը։ Քնած գազանը նորից զարթնեց նրա սրտում։ Անցան մի քանի հինգ րոպէներ, Մառալի համար շատ դառն րոպէներ։ Սակայն Անդրէասը չէր վերադառնում։

—Ի՞նչ եղաւ Անդրէասը, չվերադարձա՞ւ,—հարցրեց Տարասը թամադային։

—Անդրէասը քո քէֆից լաւ քէֆ է քաշում, գի՞ժ է որ վերադառնայ,—ասացին մի քանի արբածներ, ծիծաղկոտ հայեացք ձգելով Մառալի վրայ։

—Կեցցէ, աֆֆերի՛մ Անդրէա՛ս, քէֆդ քաշի՛ր, ո՞ւմ ինչ գործ,—գոռում-գոչումով, ծափահարութիւններով լցրին խրճիթը և սկսեցին խելագարի նման պարել սազի ու շուլի ձայնակցութեամբ։

Մառալը զգաց, որ այդ ակնարկները իր կնոջ և Անդրէասի միջև եղած ամենամտերիմ յարաբերութիւններին են վերաբերում և մինչև անգամ այդ յայտնի է բոլոր մշակներին, ուստի այլ ևս նստել անկարող ե-

դաւ։ Մի ցնցող ուժ րոպէաբար նրան շարժեց տեղից։ Թէ սենեակից ի՞նչպէս դուրս թռաւ, ոչ ոք չնկատեց։ Աշնանային գիշերուայ սառնութիւնը և թարմ օդն անգամ չսթափեցրին Մառալին։ Նա գնում էր մթութեան մէջ դէպի իր տիրոջ այգին, և անկապ-անկապ մտքեր գալիս-անցնում էին նրա բորբոքուած ուղեղով։

«Խե՜ղճ ողորմելիս,—ասում էր ինքն իրան.—ի՞նչպէս էր, որ խաբուեցի, նորից միալ համաձայնուեցի։ Ի՞նչպէս եղաւ, որ այդ գայլին հաւատ ընծայեցի։ Առանց օգուտ ստանալու ե՞րբ է փողատէրը օգնել չքաւոր դժբախտին։ Այո, նրանք օգնում են, տալիս են, բայց առնում են քեզնից շատ բան, ամենաթանկն անգամ։ Յիմարս նոր եմ հասկանում, որ խաբուած եմ և մի փոր հացի համար ընտանեկան պատիւս եմ ծախել։ Ինձ համար նոր է պարզվում, որ վարձելով ինձ՝ Անդրէասը մի կողմից՝ կամեցել է հարստահարել ֆիզիքական ուժս, այգեպանիս հմտութիւնը և միւս կողմից՝ գողացել է կնոջս սիրտը, խլել է ինձնից երեխայիս մօրը, թշուառութեանս ընկերոջը։ Այժմ միայնակ եմ ես, անօգնական, խաբէութեան և չարամտութեան զոհ։ Օ՜հ... Այս անտանելի է։ Ես Անդրէասին ցոյց կը տամ, թէ ի՞նչ է նշանակում ի զուր տապալել ուրիշին և տմարտութեամբ սպանել իրան կերակրողին։ Նրան ցոյց կը տամ, թէ ի՞նչ է նշանակում ծաղրի ու անպատւութեան առարկայ դարձնել ինձ ընկերներիս և քաղաքացիների առաջ»։

Այդպիսի ծանր և տանջող մտքերի ճնշման տակ նա առաջ էր շարժվում։ Տաք արցունքները թրջում էին նրա դալկացած այտերը, և գիշերուայ մթութեան մէջ արձագանք էր տալիս Մառալի ընդհատ փղձկոցը։ Վերջապէս նա հասաւ Անդրէասի բնակարանին, որ ընդհանուր շէնքերից առանձին էր կանգնած։ Անկանոն շնչառութիւնը զսպելով՝ Մառալը հազիւ մօտեցաւ նրա պատուհանին։ Ականջ դրեց։ Ներսը լուռ էր։ Վրայ վա-

գեց դէպի նրա բնակարանի դուռը, ստուգելու համար թէ արդեօք դռան վրայ կողպէք կա՞յ թէ ոչ։ Եւ կարծես կրծքի վրայից մի ահագին ապառաժ գլորուեց, երբ Անդրէասի դռան վրայ կողպէք չգտաւ։ Նա հանգստացաւ այն համոզումով, որ Անդրէասը գինուց ծանրացած, ուղղակի տուն է դարձել հարևանի մօտից և արդէն քաղցր քուն է ճաշակում։ Այո, մի առ ժամանակ Մառալը իր սիրտը թեթև զգաց և ուղևորուեց դէպի իր բնակարանը, քնով կազդուրելու իր յոգնած ուղեղն ու մարմինը։ Հասնելով իր բնակարանին, նա սկսաւ դուռը ծեծել։ Լսող չեղաւ։

«Ի՞նչ խորն է քնել Նախշունը», — մտածեց նա ու յոգնած քայլերով մօտեցաւ առաջքի պատուհանին։

Պատուհանը ցածր էր։ Բաղխեց և ապա ականջը սեղմեց պատուհանին։ Ոչինչ չէր լսւում։ Նորից բաղխեց։

—Նախշո՛ւն, դուռը բաց, շո՛ւտ, քունս տանում է։

Պատասխան չկար։ Նա ամբողջովին լսողութիւն դարձաւ, իմանալու թէ արդեօք Նախշունը շարժւո՞ւմ է ներսը՝ դուռը բանալու։ Վերջապէս նրա ականջին քչփրչոցներ հասան, որոնք գալիս էին սենեակի ներսից. միևնոյն ժամանակ նա պատուհանի ճեղքից անսպասելի կերպով նկատեց, որ ներսը լոյս կար և այն էլ հանգաւ։ Այստեղ սև կասկածը նորից զարթնեց նրա վիրաւոր սըրտում, և այս անգամ՝ ամենակատաղի կերպով։ Մառալը առանց կասկածելու համոզուեց դառն եղելութեան մասին։ Թանկագին որսը նա իր ձեռում զգաց, և մի գազանային արիւնարբու վրիժառութեան անյագ ծարաւ ծագեց նրա մէջ։ Այդ րոպէին նրա լարուած ականջին պատուհանի ճռնչիւն հասաւ։ Նա իսկոյն յիշեց պահապանի պատմութիւնը ետևի պատուհանի մասին և մի ակնթարթում ոտնածայրի վրայ անյայտացաւ մթութեան մէջ։ Նա ետևի պատուհանին հասաւ այն րոպէին, երբ պատուհանը բացուեց զգուշութեամբ և մէկը գնդակի ա-

բազութեամբ սեննակից դուրս թռաւ դէպի գիշերային մթութիւնը։ Մառալը այլևս անկարող եղաւ զսպել իրան, մի ակնթարթում հանեց իր չերքէզի ահագին մեծութեամբ դաշոյնը և ամենայն կատաղութեամբ մինչև կոթը խրեց պատուհանից դուրս թռչողի կուրծքը։

—Վա՜յ... սիրտս...

Այդ բառերին հետևեցին մի քանի խռընչիւններ, և մի անշնչացած դիակ ծանր պարկի նման ցած գլորուեց ուղիղ Մառալի ոտների տակ։

Դա Անդրէաս էր...

—Թող պատառուի սիրտդ, ինչպէս պատառ պատառ արիր իմ սիրտը.—մռնչում էր Մառալը և անընդհատ հարուածում էր արդէն անզգայ դիակին։

—Ինձ էլ սպանի՛ր, ինձ էլ... Նրա հետ...,—սեննեակից լսուեց մի կանացի, սիրտ պատառող ձայն, և դրան հետևեցին մորմոքող հեծկլտանքներ...

Դա Նախշունն էր, որ յուսահատ ողբում էր իր մարող երջանկութիւնը։

ԳԷՈՐԳ քահ. ՄԿՐՏՈՒՄԵԱՆ

---

# ԲԱՐՐԻԿԱԴԻ ՎՐԱՅ

## Պատմուածք

*(Զինուորի յիշողութիւններից)*

---

Թնդանօթների որոտը, հրացանների ու ատրճանակների համազարկերը, սպաների աղաղակը, վիրաւորների հառաչանքները և հիւսիսային քամու սուլոցը միմեանց խառնուելով՝ կատարեալ քաօս էին ներկայացնում։

Մարդիկ գազանացել էին։ Արիւնը գետի պէս հոսում էր, փողոցներում դիակները տասնեակներով թափուած՝ փտում էին և սարսափելի գարշահոտութիւն տարածում չորս կողմը։ Ամեն մարդ կորցրել էր իր գլուխը, չգիտէր թէ ինչ էր անում, և ամենքը կարծես թէ մեքենայաբար կոտորում էին միմեանց։

Քաղաքը դժոխքի էր փոխուել։

Փողոցների ծայրերում, այստեղ և այնտեղ, էլէքտրաքարշի վագօններից, հեռախօսի ու հեռագրաթելի գերաններից, տների ջարդուած դարպասներից բարրիկադներ էին շինուած, ու նրանց ետևից՝ օր ու գիշեր ատրճանակների ու հրացանների ճարճատիւն էր, որ լսվում էր։

Ամբողջ գիշերը մենք պաշարել էինք այդպիսի բարրիկադներից մէկը, բայց նա անձնատուր չէր լինում։ Էլէքտրաքարշի հսկայական վագօններից շինուած և հեռախօսի լարերով ամուր կապկպուած բարրիկադը անձնատուր չէր լինում և նրա պաշտպանները այդ ժամանակաւոր ամրոցի ետևից ահագին վնասներ էին հասցնում մեր վաշտին։ Մի գիշեր էր միայն անցել, և այդ մի գիշերուայ ընթացքում մենք կորցրել էինք համարեա թէ մեր մարդկանց կէսը։ Ամբողջ արկղներով փամփուշտները միմեանց ետևից հասցնում էին մեզ, և վայրկեանապէս դատարկում էինք, բայց բարրիկադը դեռ կանգուն էր։ Նրա պաշտպանները կատաղի դիմադրութիւն էին ցոյց տալիս, և

Նրանց համազարկերը միմեանց ետեւից հնձում էին մեր շարքերը։

Անքուն, յոգնած, բարոյապէս ընկճուած՝ մենք սպասում էինք, որ լուսաբացին մեզ օգնութեան կը հասնէ Թնդանօթաձիգ խումբը։ Իսկ խաւար գիշերը կարծես թէ լուսանալու մտադրութիւն չունէր...

Ժամերն անցնում էին ժամերի ետեւից, արեւելքն արդէն շառագունել էր, բայց օգնութիւնը չէր հասնում, իսկ բարրիկադը շարունակում էր ռմբակոծել մեզ։ Նրա մէջտեղում տնկուած բարձր գերանի վրայ ծածանվում էր հսկայական կարմիր դրօշը, ամբողջովին ծակծկոտուած մեր փամփուշտներից։ Պաշարուածները չէին երեւում մեզ, միայն Նրանց համազարկերն էին ապացուցանում, որ այնտեղ կենդանի մարդիկ կան։

Լոյսը կամաց-կամաց բացվում էր։ Խաւարի միջից միմեանց ետեւից դուրս էին սողում քաղաքի հսկայական, կիսաւեր տները։ Այս ու այն կողմում, Թնդանօթների ռումբերից հրդեհուած տների բոցերը անթիւ լեզուակներով դէպի երկինք էին բարձրանում։ Խանձուող մարդկային մարմնի ճենճերահոտը լցրել էր օդը։ Մերթ ընդ մերթ, հեռւում, լսվում էին Թնդանօթների ուժեղ զարկերը, որոնք անթիւ արձագանքներով տարածվում էին առաւօտեան խոնաւ օդի մէջ։

Լոյսը բացուելուն պէս, բարրիկադը ուժեղացրեց իր գործունէութիւնը։ Կարծես թէ զգալով մօտալուտ վախճանը, պաշարուածները աշխատում էին որքան կարելի է թանկ գնով ծախել իրանց կեանքը, ատրճանակների համազարկերին յաջորդում էր ռումբերի տրաքոցը՝ ամեն անգամ տասնեակ վիրաւոր և սպանուած զինուորներ գետին գլորելով։

Ընկճուած տրամադրութեան տակ՝ մենք շարունակում էինք պաշարումը։ Մեր թոյլ, յոգնած ձեռքերը դժուարութեամբ էին պահում իրանց մէջ հրացանները, իսկ փամփուշտները սուլելով ամեն վայրկեան թռչում էին մեր շուրջը։

Ահա վերջապէս հեռւում լսուեց ձիերի տրոփիւն։ Մեզ օգնութեան էին գալիս։

Դղրդիւնով վրայ հասաւ Թնդանօթաձիգ գունդը, կանգ առաւ, և Թնդանօթները սկսեցին որոտալ։ Մի քանի զարկերից յետոյ, բարրիկադը ոչնչացուած էր, պաշարուածների համազարկերը լռեցին։ Իրանց համար ճանապարհ բացելով, Թնդանօթները առաջ սլացան, իսկ մենք անցանք բարրիկադի ետեւը։

Օ՜, ինչ սարսափելի տեսարան բացուեց մեր առաջ…

Ամբողջ փողոցը մի քանի տասնեակ քայլ տարածութեան վրայ ծածկուած էր դիակներով… Այնտեղ կային և ծերեր, և երիտասարդներ, և պատանիներ, մինչև անգամ մանուկներ… Մէկի մարմինը ամբողջովին մսի մի գունդ էր դարձած, միւսի ոտը, երրորդի ձեռքը կտրած, այս ու այն կողմը ընկած… Արիւնը հսկայական մի լիճ էր կազմել փողոցի մէջտեղը, և այդ լճի մէջ, մահուան վերջին ճիգերում լողում էին անթիւ վիրաւորներ…

Էլէքտրաքարշի վագոնի վրայ դեռ կիսամեռ դրութեան մէջ, միմեանց գրկած, ընկած էր մի երիտասարդ զոյգ. մի երիտասարդ՝ դեռ անբեխ ուսանող և մի չքնաղ գեղեցկութեամբ աղջիկ… Երկայն շագանակագոյն մազերի հիւսերը ընկած էին նրա ուսերին, իսկ արիւնը աղբիւրի պէս դուրս էր ցայտում կրծքի վէրքից։ Մի ձեռքով գրկած՝ երիտասարդի սառած մարմինը, միւսով նա բարձր բռնած ունէր պատառոտուած կարմիր դրօշակը։

Երբ մերկացրած սուրը ձեռքին սպան մօտեցաւ նրան, աղջիկը ահագին ոյժ գործ դնելով կիսով բարձրացաւ տեղից, ծածանեց դրօշակը և թոյլ, մարուող ձայնով գոչեց.

—Կեցցէ… ազատու…թիւնը…

Յետոյ խուրձի պէս գետին գլորուեց, մի րոպէ խռխռացրեց և լռեց…

Սպան իր սրի մի ուժգին հարուածով կիսեց նրա դեռ ևս տաք մարմինը…

. . . . . . . . .

Բարրիկադը ոչնչացուած էր, և մենք նրա փլատակների միջից առաջ անցանք նոր քաջագործութիւններ կատարելու…

ՎԱՂ. ԹՈՒՄԱՆԵԱՆ

# ՍԷՐԸ

—Լսում ես, մայր իմ, այնտեղ՝ հեռու՝ փոթորկող քաղաքի ձայները... Այնտեղ կեանքն է... Արարողութիւններ են կատարվում... Մարդիկ ծնվում են, ապրում են, հրճւում են... Իսկ իմ շուրջը՝ մթութիւնն է տիրում... տանջանքն է տիրում...

Խուլ, զսպուած հեկեկանք էր դողդողում հիւանդի սենեակում. կարծես՝ խեղդւողի կրծքից էին ելնում այդ հնչիւնները։

—Դու լաց ես լինում... Ինչո՞ւ... Չէ՞ որ ինձ ծնելիս՝ ծընեցիր և իմ մահը... Սրբիր աչերդ, մայր. դա ճակատագրական է...,—շշնչում էին գունատ շրթունքները։

Իսկ մայրը, չոքած՝ պատանու անկողնի առաջ, անթիւ համբոյրներով ծածկում էր նրա նիհար ձեռները—որոնք շուտով՝ գուցէ յաւիտեան կը չքանան—և դառն արտասուքով ողողում։

—Մայր իմ, ես մտածում էի իմ կեանքիցս ստեղծել մի չքնաղ երազ... Ես ինձ դիւցազն էի երևակայում՝ ամպերը սլացող... Իսկ տեսնո՞ւմ ես, այդ սև ուրուականը կանգնել է իմ առաջ ու փշրում է այդ երազները... Դու չես, որ հեկեկում ես... Իմ անուրջներն են՝ փշրուած, գեղեցիկ անուրջները,—զառանցում էր պատանին։

Սակայն մօր փաղաքշանքները՝ գարնան ցօղի նման՝ սկսում են հանգստացնել այրուող շրթունքները, սրտում վառում են յոյսի կայծ... Դէմքին ցոլում է թոյլ, հեռաւոր ժպիտ...

—Երդւում եմ արևովդ, կրկին կը լինես ուժեղ... Կրկին գարունը քեզ կը ժպտայ, քո երազները կիրականանան... Եւ ես կը լինեմ քեզ հետ, միշտ քեզ հետ...

Պատանու դէմքը նման էր գունատ, մարող լուսնի... Տանջանքով սքօղուած հայեացքը որոնում է գէթ րոպէական սփոփանք...

Թախծոտ հայեացքը յանկարծ կանգ առաւ մօր՝ մոմի նըման բարակ մատների վրայ։

—Մայր իմ, այս մատանին ինձ հրապուրում է... Զքնաղ է ու հմայիչ... Նուիրիր ինձ... Թող քո մասնիկը ինձ հետ լինի միշտ...

—Անցեալի գեղանի յուշերով է զարդարուած. սրա մէջ է իմ անցեալի հոգին։ Երկու գանձ է մնացել վաղեմի օրերից. սա և դու... Երկուսն է՝ իբրև վաղեմի օրերի շքեղաշուք ազդանշան...

Պատանին նայում էր խորին ուշադրութեամբ։ Աչքերում փայլում էր աղերսանք։ Ու թանկարժէք այդ զարդարանքը մայրը մեկնեց հիւանդ որդուն։

—Քո մասնիկն է, ինձ հետ կը լինի միշտ,—շշնջում էր նա թոյլ ձայնով...

Իսկ այդ ձայնի ելևէջները, այդ խօսքերը՝ ցնցում էին մօր սիրտը, կենդանի օձերի նման ցցվում, իսկ շրթունքները կրկնում էին՝ կարծես երազի մէջ.

—Երկու գանձ է մնացել. սա և դու։ Միակը, որը չի խլել անգութ կեանքն ինձանից...

Յուշերը՝ խաւարը պատռելով՝ կուտակվում էին, հրհրում իրար ու չքացող մատաղ կեանքի արհաւիրքում ձուլվում...

Սիրոյ այդ վեհ նշանի առաջ պատանին լուռ խոնարհուեց։ Դժգոյն, գունատ դէմքին՝ ցնցուղ-լոյսի նման փայլեց նշոյլը խնդութեան։ Մօր մոմի նման բարակ մատները համբուրելով՝ գեղանի յուշերով զարդարուած մատանին նա վերցրեց։

—Դա յուռութք է, դա հմայեակ է... Ստացել եմ երազի նման երջանկութեանս վայրկեաններին։ Այսուհետև քո մատները թող զարդարեն՝ իբրև բախտի ապաւէն,—կրկնում էր մայրը, որդու առաջ ընկած ծնկաչոք, ու անթիւ համբոյրներով դրոշմում այն մեծ, անծայր զգացմունքը։

* * *

Մահը խնայեց քանքարաւոր պատանուն։

Կրկին փայլուն դէմքը արեգակի նման պայծառ ժպտաց։

Ապա... Կենսայոյզ ու քաջարի՝ կեանքի ծովում լողում էր նա, ու փառքը գեղաքանչ պսակ էր հիւսում, պանծալի գլուխը զարդարում։ Ու բարձունքներում սաւառնելիս՝ գերի ընկաւ դիցուհուն գեղեցիկ ու տարփատենչ։

Մի անգամ, երբ փափկանազ ու գեղահրաշ սիրուհին գուրգուրում էր ու փայփայում, իսկ պատանին՝ յաւերժական ու անհուն սիրոյ երդումներն էր շռայլում... այդ գեղեցիկ վայր-

կեանին, երբ ծովը ծփում էր հանդարտիկ ու օդում ոսկի հնչիւններ էին դողդողում, գեղեցիկ այն դիցուհին՝ իր սիրածի հրավառ սրտի հետ անզգոյշ խաղալ կամեցաւ.

—Երդւում ես... գուցէ և ճիշտ են ասածներդ... Սակայն՝ ինձ հաւատ է կարևոր, անխախտ հաւատ...

—Ի՛նչ ես պահանջում, հրամայիր... Էութեանս մէջ չկայ անկիւն, որը քեզ չլինէր նուիրուած... Կը կամենաս, կեանքի գնով ապացուցանեմ...

—Ոչ, դա աւելորդ է. այդ մեծ զոհ է... Քեզնից կը խնդրեմ չնչին մի իր... Դու տեսնում ես՝ իմ խնդիրը համեստ է չափազանց... Ընծայիր ինձ այդ մատանին, որը այրվում է քո մատին...

—Խնդրիր այլ բան. սա սրբազան է ինձ համար։ Ոսկեձոյլ այս մատանին՝ յակինթներով զարդարուած՝ թանկարժէք մի մեծութիւն է...

—Տուր ինձ. դա հմայիչ է ու չքնաղ...

—Ոչ... Իմ մօր հոգին է այստեղ...

—Բայց դա ինձ հրապուրում է...

—Թող այդ քմահաճոյքը... Միայն սա ինձ հետ գերեզման կիջնի...

—Դու սիրում ես իմ ձեռները համբուրել... Թող այդ անգին քարերով ես զարդարեմ...

—Ոչ... Այս յակինթները արեան այն կաթիլներն են, որոնք ծորում են իմ մօր սրտից։ Ու նրանց երկնեց Մեծ Սէրը։

—Նուիրիր ինձ այդ սրբազան նշանը Մեծ Սիրոյ,—գոչեց անգութ գեղեցկուհին։

Խորին թախիծ պատեց արփիափայլ սիրածին, ու գեղանի գծերը սքօղուեցին մեռելային գունատութեամբ։

—Ո՛չ, դա անկարելի է,—շրթունքները շշնջացին։

—Այո, տեսնում եմ պարզ. քո երդումները սնոտի էին, և դու զուրկ ես Սիրոյ այն մեծ զգացմունքից, որը հրաշքներ է գործում,—արտասանեց խորին տհաճոյքով դիցուհին ու թագուհու շարժուածքով բարձրացաւ իր գահից։

Վսեմաշուք դէմքի գծերը սքօղուեցին գոռոզութեամբ։ Կայծակ ու շանթ փայլատակեց...

Ու գիշերացաւ դէմքը պատանու։

Լուռ՝ ինչպէս մեռեալը գերեզմանում՝ նա յանձնեց անգութ ու գեղանի սիրուհուն՝ մօր յուշերը զարդարուն։

*Խօրին հաճոյքի թրթիռները ցոլացին տարփատենչ դիցուհու դէմքին, նրա վսեմ գծերին։ Ու անփոյթ շարժումով՝ թագուհու շարժումով ձգեց ծովը փրփրակէզ՝ փրփրակէզ Մեծ Սիրոյ նշանակը թանկարժէք։ Ձգեց ծովը հրճուանքով ու ժըպտալով՝ փաղաքշեց.*

*—Աւելի մեծ ապացոյց դեռ սպասում եմ քեզանից...*

ԿԱՐԻՆԷ

— Թող կորչի՛ այն աղջիկը,
կամ սիրուհին, որ կռւով
Սէր կ՚զեր։—

# Ձ Մ Ե Ռ

(Ա լ ֆ ր է դ դ ը-Վ ի ն ի ի ց)

(Ազատ փոխադրութիւն)

*Ի՜նչքան լա՜ւ են, ի՜նչքան լա՜ւ են հեքեաթները,*
*Կախարդական հեքեաթները անցածի մասին,*
*Երբ ամբողջ տարածութի՜ւնը լայնարձակ մարգերի՝*
*Փայլփըլո՜ւմ ու շողշողո՜ւմ է արծաթի նըման,*
*Երբ անտերև թըփերի ու ծառերի վըրայ*
*Ալմազնե՜ր են փողփողում ու վառվում։*

*Եւ որպէս թեթև սըլաք երկընքի կապոյտ ծոցում՝*
*Թանձրօրէն սևին է տալիս սրագագաթ կաղամախին.*
*Եւ հողմահալած ու ձիւնածեծ ագռաւը,*
*Որպէս աշտարակային հողմացոյց,*
*Օրօրվում, ճօճվում է նրա վըրայ...*

Ս. ՑՈՎՀԱՆՆԻՍԵԱՆ

# ՎԱՐԴ

(Լեհերէնից)

---

Ես կանգնած էի Նիցցայում, ծովի ափին, ձեռքիս ծիրանագոյն վարդ բռնած։

Իմ առաջ ընկած էր ծովը, ոսկեփայլ, կապուտակ, մանուշակագոյն-արծաթափայլ, խաղաղ-արեգակնային ծովը, շոգ կէսօրին։

Ծովեզրեայ ալիքի յասպիսը, մարգարիտն ու խայտացող զմրուխտը վազում էին դէպի իմ ոտքերը, աղմկելով միակերպ և չափաւոր, ինչպէս քնարը, երբ ձեռքով զարկում ես միևնոյն լարին։

Ջինջ, ոսկեփայլ ու կապուտակ երկնքում կանգնած էր ահագին բոցավառ արևը։

Գարուն էր։

Ջրի վրայ պտտվում էին մի քանի ուրուրներ. նրանք երբեմն հպվում էին ջրի մակերևոյթին, երբեմն բարձրանում էին նրանից. թիթեռներն են այդպէս թռչում մարգագետինների վրայ։

Հեռուն, արևելքում, անցնում էր շոգենաւը, նա իր ետևից տանում էր ծխի մոխրագոյն քուլաներ և աստիճանաբար կորչում էր ծովի անապատում։

Ես իմ վարդը նետեցի ծովը։

Ալիքը յետ փախաւ և տարաւ նրան իր հետ։

Ես տեսայ, թէ ինչպէս նա հեռանում էր սկզբում մարգարտէ փրփուրի, իսկ յետոյ, աւելի գունատ և գունատ, ծովի զմրուխտի մէջ։

Իսկ մի քանի ակնթարթից յետոյ նա ալիքի հետ միասին կրկին մօտեցաւ իմ ոտքերին։

Ես նկատեցի, որ թերթիկներից մի քանիսը, որոնց պոկել էր ջրի հոսանքը, լողում էին առանձին։

Իսկ ալիքը յետ գնաց և հետը տարաւ վարդին, և մէկ ակընթարթից յետոյ ծաղիկը կրկին իմ ոտքերիս մօտն էր եկել ալիքի հետ միասին։

Միայն՝ շատ թերթիկներ լողում էին դարձեալ առանձին։

Ես երկար կանգնած էի ծովի մօտ։ Ալիքը մօտենում էր ինձ և դարձեալ հեռանում։ Նա իմ կանգնած տեղն էր բերում աւելի ու աւելի փոքրացած ծաղիկը, որից աւելի ու աւելի շատ էին պոկուած թերթիկներ։

Վերջապէս վարդից ոչինչ չմնաց, բացի ջուրն ընկած մի կոյտ թերթիկներից...

Իսկ ծովը նրանց ինձ մօտ էր բերում շարունակ, բերում էր շարունակ...

Այդպէս չէ՞, արդեօք, պատահում և մարդու սրտի հետ։ Վերջ ի վերջոյ նա էլ մօտենում է ոտքերին թերթիկների կոյտ դարձած...

Թարգմ. Ե.

---

# ՆՇԱՆՈՒԱԾՆԵՐ*)

## ԳՈՐԾՈՂՈՒԹԻՒՆ ԵՐՐՈՐԴ

*Բեմը ներկայացնում է ընդարձակ սեղանատան։ Ձախ պատի տակ տախտ բարձերով և այլն։ Մէջտեղի պատի վրայ 2 լայն դռներ, որոնցից ձախակողմեանը բաց անելիս երևում են սեղանի շուրջը նստած թուղթ խաղացողներ, սենեակը լաւ լուսաւորուած։ Աջ կողմինը բաց անելիս, երևում է մահճակալ, պերճ գոյներով պատին գորգ. առաստաղից կախուած է կարմիր գոյնի լուսամփոփով լամպ։ Աջ պատի վրայ 3 դուռ. առաջինը տանում է դուրս, երկրորդը՝ խոհանոց, երրորդը՝ Սահակի ննջարան։ Առանձին շքեղութիւն չկայ, բայց նախկին անշքութիւնից էլ ոչինչ։ Սենեակի մէջտեղում ընթրիքի սեղան զանազան խմիչքների շիշերով և այլն։ Առաջի դռան մօտ սեղան՝ գըլխարկներ դնելու համար։*

### ՏԵՍԻԼ 1

**Սահակ և Գայիանէ** (Աւելի լաւ հագնուած)

*ԳԱՅԻԱՆԷ.*— (Սահակին, որ սեղանի ծայրին նստած է նռւազ)։ *Տեսնում ես, եթէ լեզուիդ տիրութիւն անես, միշտ քեզ լաւ կը պահենք։*

*ՍԱՀԱԿ.— Դուք պարտաւոր էք այդ անելու. ես ձեզ քինչ չեմ պահել։*

*ԳԱՅԻԱՆԷ.— Ո՞վ է հակառակում. դրա համար էլ քեզ լաւ ուտեցնում ենք և խմեցնում. և շուտով, երբ լաւանաս, Շուշանիկը քեզ համար շորեր էլ կը գնի։*

*ՍԱՀԱԿ.— Ո՞ւր է նա։*

*ԳԱՅԻԱՆԷ.— Ի՞նչ ես անում նրան... Նա գործ ունի։*

*ՍԱՀԱԿ.— Ի՞նչ գործ, կանչիր նրան ինձ մօտ։*

*ԳԱՅԻԱՆԷ.— Տէր Աստուած, ինչքա՞ն է հարկաւոր։ Հաց ես ուզում՝ կեր, գնա պառկիր էլի. ինչ ես խանգարում ուրիշներին։*

*ՍԱՀԱԿ.— Կանչիր նրան այստեղ։ Ե՞ս եմ այս տան մեծը թէ ո՞վ։*

*ԳԱՅԻԱՆԷ.— Բայց չիմանամ, թէ ինչ ես ուզում։*

---

*) *Արօր» № 10—11.*

ՍԱՀԱԿ.—*Ես ձեզնից հաշիւ պէտք է պահանջեմ։* (Գլուխը դրեց սեղանին)։

ԳԱՅԻԱՆԷ.—*Լաւ, լաւ. գլուխներս մի՛ տանի, կանչում ենք։* (Բացում է խաղասենեակի դուռը, որտեղ կատարվում է հետեւեալը)։

ԳՐԻԳՈՐ.—(Բռնած է թղթերի կօլօդը)։

ԳԱՍՊԱՐ.—(Վերցնում է նրա ձեռքից մի թուղթ եւ միացնելով ձեռքի մէջ եղածի հետ՝ նայում նրան ճրագի դիմաց)։

ԳԱՅԻԱՆԷ.—*Շուշան, այստեղ եկ։*

## ՏԵՍԻԼ 2

**Գայիանէ, Սահակ եւ Շուշանիկ**

ՇՈՒՇԱՆ.—(Մտաւ խաղասենեակից շքեղ հագնուած, բերանին ծխախոտ, ձեռքերին փողեր, խաղասենեակի դուռը ծածկեց)։ *Ստացի՛ր կարտիդ փողերը։ Ինչո՞ւ կանչեցիր։ Ինչպէ՜ս թուղթը լաւ բերում էր։*

ԳԱՅԻԱՆԷ.—(Ստանալով եւ մարդուց ծածուկ համրելով փողերը) 1, 2, 3. (Շուշանին)։ *Տես ի՞նչ է ասում։* (Շարունակելով հաշուել)։ 4, 5, 6.

ՇՈՒՇԱՆ.—(Ծխախոտը զցում է գետնին եւ կոխ տալիս)։ *Ա՛խ, հայրիկ, այդ ինչո՞ւ ես տեղիցդ վեր կացել։*

ԳԱՅԻԱՆԷ.—*Հաշիւ է պահանջում։* (Դնում է փողերը գըրպանը)։

ՇՈՒՇԱՆ.—*Ի՞նչպէս ես. տաքութիւնդ անցա՞ւ։*

ՍԱՀԱԿ.—*Ես ինձ լաւ եմ զգում։*

ՇՈՒՇԱՆ.—*Սենեակդ ցուրտ չէ՞։*

ՍԱՀԱԿ.—*Լաւ է, որդի, խոհանոցից միշտ տաք է գալիս։*

ՇՈՒՇԱՆ.—*Իսկ անկողինդ փափո՞ւկ է։*

ՍԱՀԱԿ.—*Ես փշերի վրայ էլ ինձ հանգիստ կը զգամ, միայն թէ այստեղս* (սիրտը ցոյց տալով) *հանգիստ լինի։*

ՇՈՒՇԱՆ.—*Հոգս մի անի, հայրիկ, ամեն բան լաւ կը գնայ։ Հաց կերե՞լ ես։*

ՍԱՀԱԿ.—*Ոչ։*

ՇՈՒՇԱՆ.—*Դէհ շուտ արա կե՛ր։*

ՍԱՀԱԿ.—*Տապում ե՞ս երևի։*

ՇՈՒՇԱՆ.—*Ոչ, ես հէնց այնպէս եմ ասում։*

ՍԱՀԱԿ.—*Երէկ մայր և աղջիկ խոստացաք ինձ հաշիւ տալ։*

ՇՈՒՇԱՆ.—*Ա՛խ, դու դեռ չե՞ս մոռացել։*

ԳԱՅԻԱՆԷ.—(Կողմ)։ Ինչ կը մոռանա՜յ։ (Մարդուն)։ օհ տեսնում ես, որ արձակ ժամանակ չունենք։

ՍԱՀԱԿ.—Ես քեզ չեմ հարցնում։

ՇՈՒՇԱՆ.—Լաւ, վաղը առաւօտ մենք քեզ հաշիւ կը տանք։

ՍԱՀԱԿ.—Թէ չէ՝ նա միշտ ծռում է խօսքը և հարցիս ուղիղ չէ պատասխանում։

ԳԱՅԻԱՆԷ.—Ի՞նչ ես հարցնում, որ ինչ պատասխանենք։

ՍԱՀԱԿ.—Ես հարցնում եմ՝ ոսկով լի կարա՞ս էք գտել, որ ուզում էք աշխարհ զարմացնել. գուցէ ուզում էք կարծեն, որ ես այնտեղ գողութիւնով եմ եղել պարապելիս, թէ՞ ծերութեանս միջոցին կամենում էք ինձ պարտքի տակ քցել։

ԳԱՅԻԱՆԷ.—Ձեռք վերցրու մեզնից. բաւական է ինչքան դատարկ դատարկ խօսեցիր։

ՍԱՀԱԿ.—Ի՞նձ ես ասում այդպէս։ (Ուզում է վեր կենալ)։

ՇՈՒՇԱՆ.—(Զսպելով նստեցնում է նրան)։ Դու նրա վրայ մի բարկանայ, հայրիկ. նա միշտ ասում է՝ «պէտք է աշխատենք հայրիկիդ բեռը թեթևացնել, թէ չէ՝ ծերացել է խեղճը, ոյժից ընկել է»։

ՍԱՀԱԿ.—Թող հազար անգամ իմ բեռը ծանր լինի, ես կը տանեմ, միայն թէ ոչ ոք չհամարձակուի քո անունից կպչելու։

ԳԱՅԻԱՆԷ.—Ո՞վ կը համարձակուի նրա մազին կպչելու. Թող նա մէկ գայ ինձ հետ խօսի, ես կիմանամ, թէ ինչ կը կը պատասխանեմ այդպիսիներին։

ՍԱՀԱԿ.—Ես էլ Թքեցի կամուրջի գործակատարի երեսին։

ՇՈՒՇԱՆ.—Եւ շատ լաւ էլ արել ես։ Տղամարդը քաջ պէտք է լինի։ Ա՜յ այդ մէկը ինձ դուր եկաւ։

ՍԱՀԱԿ.—Լա՜ւ եմ արել։

ՇՈՒՇԱՆ.—Շատ լաւ. թէ չէ՝ մինչև ե՞րբ պէտք է թոյլ տանք, որ վրաներիս հաչեն։

ՍԱՀԱԿ.—Անպիտանները այսքան էին բացում բերանները։

ՇՈՒՇԱՆ.—Հըմ. չներ։ Կարելի է՝ քաղցած ես, հայրիկ։

ՍԱՀԱԿ.—Այո, կարելի է ասել՝ շատ քաղցած եմ։

ՇՈՒՇԱՆ.—Ապա ինչո՞ւ չես ուտում. մի՞թէ այդ բոլորը քեզ համար չէ. կե՛ր։

ԳԱՅԻԱՆԷ.—(Ծածուկ)։ Խմացրու նրան։

ՇՈՒՇԱՆ.—Այ, ես քեզ մի քիչ կը խմացնեմ, որ կազդուրուես։

ՍԱՀԱԿ.—(Ուտում է)։ Իսկ յետոյ էլ հաշիւ կը տաք ինձ։

ԳԱՅԻԱՆԷ.—(Կողմ)։ Այդ մէկը չի մոռանում խորամանկը։

ՇՈՒՇԱՆ.—Ի հարկէ, ես քեզ համար կը պատմեմ ամեն ինչ և ոչ մի բան էլ ծածուկ չեմ պահի։ Միայն թէ դու պէտք է ուտես և խմես ախորժակով։ (Ածեց)։

ՍԱՀԱԿ.—Իմ սիրելի, ո՞ր տղամարդը չի ուտի և խմի քո ձեռքից ախորժակով։ (Խմեց)։

ՇՈՒՇԱՆ.—Ա՛յ, այդ ասածդ ինձ դուր եկաւ։ Հիմա տեսնում եմ, որ դու առաջուայ պէս սկսել ես ինձ սիրել։

ՍԱՀԱԿ.—Օ՜, ես քեզ միշտ սիրել եմ, միշտ։

ՇՈՒՇԱՆ.—Դէ, խմի՛ր մէկ էլ։ (Ածեց)։

ՍԱՀԱԿ.—Սա քո կենացը։

ՇՈՒՇԱՆ.—Ո՛չ, սպասի՛ր, իմ կենացը կը խմես յետոյ, սա դեռ խմիր հէնց այնպէս։

ՍԱՀԱԿ.—Լաւ, թող քո ասածը լինի։ (Խմեց)։

ՇՈՒՇԱՆ.—Դէ հիմա էլ ձուկ անուշ արա. կարծեմ դու ձուկ շատ ես սիրում։

ՍԱՀԱԿ.—Իսկ քեզ ձուկից էլ շատ եմ սիրում. (Քահ-քահ ծիծաղ)։

ԳԱՆԻԱՆԷ.—(Կողմ)։ Խելքը դեռ գլխին է։

ՇՈՒՇԱՆ.—Օ՜, այդ մէկը ինձ աւելի ես դուր եկաւ։ Տեսնում ե՞ս, մինչև չես խմում, չես զուարթանում։

ՍԱՀԱԿ.—Իսկ դո՞ւ, դու ինչո՞ւ չես խմում։

ՇՈՒՇԱՆ.—Եթէ հրամայես, ինչո՞ւ չէ։

ՍԱՀԱԿ.—Ես հրամայում եմ... խմի՛ր տեսնենք։

ՇՈՒՇԱՆ.—(Փոքրիկ շիշից ածեց)։ Կենացդ, հայրիկ։ (Խմեց)։ Ի՞նչ է, զարմացա՞ր։

ՍԱՀԱԿ.—(Ապշած)։ Ի՞նչ, և դու իսկ որ խմեցի՞ր։ Դու հիմա խմե՞լն էլ ես սկսել... դու, աղջիկարմատ, չամաչեցի՞ր։

ԳԱՅԻԱՆԷ.—(Կողմ)։ Խորամանկութեանս նայեցէք... Տէ՛ր Աստուած։

ՇՈՒՇԱՆ.—(Քրքջալով)։ Բայց դու մէկ տես, սա ինչ բան է։ (Նոյնից ածեց)։ Ապա մէկ փորձիր, հայրիկ։

ՍԱՀԱԿ.—(Խմեց լզուած ծիծաղով)։ Սա հօ շաքարի ջուր է։ Իմ սիրելի, իմ նազելի, իմ քնքոյշ որդի։ Ես միշտ մտածել եմ, որ մեր թշնամիները կուրացել են և քեզ լաւ չեն ճանաչել և վրադ վատ-վատ լուրեր են տարածել։ Բե՛ր մի համբուրեմ քեզ։ (Ուզում է համբուրել)։ Ոչ, ոչ. չեմ ուզում դիպչել այդ հրաշալի սանրուածքիդ։ Միայն թէ ինձ զարմացնում է այդ բանը, թէ որտեղի՞ց է այդ շքեղութիւնը։

ԳԱՅԻԱՆԷ.—Որտեղի՞ց պիտի լինի, մեռե՞լ էինք մենք. փառք Աստուծոյ։

ՇՈՒՇԱՆ.—*Մենք ապրում ենք մեր աշխատանքով։*

ՍԱՀԱԿ.—*Դուք ապրում էք ձեր աշխատանքով։*

ԳԱՅԻԱՆԷ.—*Ապա ինչ է, կեղծ փող էինք կտրում։*

ՍԱՀԱԿ.—*Այսինքն դուք՝ մայր և աղջիկ ձեռք ձեռքի տուած էք աշխատել։*

ՇՈՒՇԱՆ.—*Ա՜խ, հայրիկ, ինչու ես զարմացած հարցեր տալիս. ասացի որ վաղը առաւօտ հաշիւ կը տամ. էլ ինչ ես ուզում։*

ՍԱՀԱԿ.—*Իսկ եթէ սուտ լինի, մի րոպէ չեմ մնայ այստեղ։* (Կնոջը)*։ Լսում ես։*

ԳԱՅԻԱՆԷ.—*Լսում ենք, լաւ։*

ՍԱՀԱԿ.—*Եթէ սա չլինէր, ես յաւիտեան ոտ չէի դնի այստեղ։* (Ծածուկ)*։ Ճշմարի՞տ է, Շուշան, որ դու հաշտուել ես Օվանէսի հետ։*

ՇՈՒՇԱՆ.—*Այո, ճշմարիտ է։*

ՍԱՀԱԿ.—*Եւ նա գալիս է այստեղ։*

ՇՈՒՇԱՆ.—(Նոյնպէս, որպէս թէ ծածուկ)։ *Մի քանի օր է, երեկոները։*

ՍԱՀԱԿ.—*Այդ լաւ է. թող ոչ ոք չիմանայ։ Դու սրա խելքով մի լինի, Շուշան. ես քեզ ասում եմ՝ դու նրա հետ բախտաւոր կը լինես։*

ՇՈՒՇԱՆ.—*Ի հարկէ։*

ԳԱՅԻԱՆԷ.—(Ծածուկ)։ *Բաւական է, տար հեռացրու այստեղից։*

ՇՈՒՇԱՆ.—*Դէ, գնա քնիր, հայրիկ... Մեր քունն էլ տանում է։*

ՍԱՀԱԿ.—*Հանգցրէք ճրագը և պառկեցէք քնելու։ Պինդ կողպեցէք դռները, թէ չէ՝ վատ գողեր են յայտնվել։ Տար ինձ իմ սենեակը, պառկեցրու և ծածկիր ինձ։ Իսկ առաւօտեան դուք ինձ հաշիւ պիտի տաք։* (Կնոջը)*։ Է՞յ, լսում ես, դու էլ։*

ԳԱՅԻԱՆԷ.—*Լաւ, լաւ. գլուխներս մի տանի. լսում ենք։*

ՍԱՀԱԿ.—(Շուշանիկի օգնութեամբ գնում է իր սենեակը մրթմրթալով)։ *Թէ չէ՝ Աստուած գիտէ, թէ գլխովս ինչ մտքեր են անցնում։* (Գնացին)։

(Մտնում է խաղասենեակից Գասպարը երկու թուղթ ձեռքին պատռտելով)։

## ՏԵՍԻԼ 3

### Գայիանէ եւ Գասպար

*ԳԱՍՊԱՐ.—Թէկուզ գլուխդ պատերին խփիր, թէկուզ տրաքուիր մէջիցդ, չի բերում, չի բերում, չի բերում։* (Ցրելով կտորները)*։ Գոնէ դու քո արդար ձեռովդ գինի ածէիր մի բաժակ։* (Գայիանեն ածեց)*։ Ամենից լաւը քո գործն է։ Ով տանի չտանի, դու հօ միշտ տարած ես։ Հը՛, ինչպէ՞ս է գնում գործերդ։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Խմում ես՝ խմի՛ր, էլ գլուխս մի՛ տանի։*

*ԳԱՍՊԱՐ.—Էլի՞ խռովեցիր։ Դէ լաւ, արի՛ հաշտուենք։ Ինչո՞ւ քեզ նման կնոջ մարդը չի եղել իմ հանգուցեալ հայրը։ Աստուած ողորմի կողքի մեռելներին։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Որ գի՞նս իմանար։*

*ԳԱՍՊԱՐ.—Ոչ. այլ որ ամեն օր արբած տուն գար և մուշտին գլխիդ մէջտեղին հասցնէր՝ ինչպէս մօրս գլխին։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Այդ ինչի՞ համար։*

*ԳԱՍՊԱՐ.—Նրա համար, որ խելքդ մի քիչ գլխիդ հաւաքուէր։ Մի խօսքով՝ կենացդ։* (Խմեց)*։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Հըմ; կոկորդումդ մնայ, խեղդուես ու պըրծնես։*

*ԳԱՍՊԱՐ.—Դէ լաւ, քեզ նման գեղեցիկ մաղամին ի՞նչ կը վայելի երիտասարդի յիմարութիւններից նեղանալ։ Ի՞նչ ես կարծում, Գայիանէ։* (Նստում է տախտի վրայ)*։ Եթէ ես մեծ ուսում առած լինէի, ինձնից երևելի մարդ չէ՞ր դուրս գայ։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Վերջացրու տեսնենք՝ խօսքդ ինչի՛ մասին է։*

*ԳԱՍՊԱՐ.—Հաշտութիւն, Գայիանէ, հաշտութիւն։ Հանաք բան չկարծես իմ արածը։ Ո՞վ ունի իմ քաղցր լեզուն. ո՞վ կը կարողանար նորից Օվանէսին այստեղ բերել։ Մի կողմից ձեր ականջը լցրի, որ նա ձեր բարին է ցանկանում, միւս կողմից էլ նրան համոզեցի, թէ դուք նրա կարօտից մեռնում էք, և որ անունը տալիս՝ բերաններիդ ջուրն է վազում։ Հիմա ձեր բարեկամութիւնը տեսնելով՝ քիչ է մնում սիրտս տրաքուի։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Էլ սիրտդ ինչո՞ւ է տրաքվում։*

*ԳԱՍՊԱՐ.—Ապա ի՞նչ։ Այդքան խոր խելք ունենաս, այդքան ուշք ու միտք, և որտե՞ղ գործադրես. 2 նշանուածներ հաշտեցնելո՞ւ։ Հըմ, ես կարող էի 2 մեծ տէրութիւններ կռուելիս՝ մէջտեղ մտնել և միլլիոններ վաստակել։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Իսկ եթէ միլլիոն ունենայիր, ի՞նչ կանէիր։*

ԳԱՍՊԱՐ.—Բարի մայր լինելուդ համար՝ գերեզմանիդ վրայ եկեղեցի շինել կը տայի։

ԳԱՅԻԱՆԷ.—Հողեմ լակած գլուխդ։

## ՏԵՍԻԼ 4

**Գայիանէ, Գասպար եւ Շուշան**

ՇՈՒՇԱՆ.—(Մտաւ նոր սենեակից)։ Պառկեցրի վերջապէս։ Ինչո՞ւ էք փախել։

ԳԱՍՊԱՐ.—Անտրակտ եմ անում, գուցէ բախտը շուռ գայ և մեր կողմը, թէ չէ՝ մի գլուխ փողերս գնում է ու գնում։ Իսկ դուք ինչո՞ւ փախաք։

ՇՈՒՇԱՆ.—Մի ժամանակ այնտեղից ինձ փախցնում էիք, յիշում է՞ք։

ԳԱՍՊԱՐ.—Չե՞ք իմանում՝ երիտասարդի գլխում օրը քանի տեսակ քամի է փչում։ Շա՜տ տարաք։

ՇՈՒՇԱՆ.—Ոչինչ բան։

ԳԱՅԻԱՆԷ.—Բաւակա՜ն չէ, Շուշան։ Գուցէ տղերքը նեղանում են, որ դու նստում ես նրանց հետ։ Աղջիկարմատին չի պատկանի, սիրելիս, նստել թուղթ խաղալը։

ԳԱՍՊԱՐ.—Ոսկի է բերանդ, և խօսքերդ՝ մարգարիտ։

ԳԱՅԻԱՆԷ.—Քեզ բան հարցնող չկայ։

ԳԱՍՊԱՐ.—Այնու ամենայնիւ աղջիկդ իր բանը քեզնից լաւ է հասկանում։ Եւ ինչո՞ւ չէ. քանի որ մարդս երիտասարդ է, չպէ՞տք է մտածի իր ապագայի մասին։ Չէ՞ որ սև օրուայ համար մի բան պէտք է յետ գցել։

ՇՈՒՇԱՆ.—Իսկ դուք շա՜տ էք յետ գցել։

ԳԱՍՊԱՐ.—Ո՞ւր է, իմ բախտս բերո՞ւմ է ձերի պէս։

ԳԱՅԻԱՆԷ.—Ի՞նչ ես հաջեցնում նրան. չե՞ս հասկանում՝ ինչ յիմարութիւններ է խօսում։

ԳԱՍՊԱՐ.—Տէ՛ր Աստուած. սուտից նեղանում էք, ճշմարտից նեղանում. ի՞նչպէս անենք ուրեմն, որ ձեզ՝ մօր և աղջկայ դուր գանք։

ՇՈՒՇԱՆ.—Աւելի լաւ է՝ լեզուներիդ տէրութիւն անէք, վերջացաւ գնաց։

ԳԱՍՊԱՐ.—Է, ես մեղայ Աստուծոյ։

## ՏԵՍԻԼ 5

**Գայիանէ, Շուշան, Գասպար եւ Օվանէս**

*ՕՎԱՆԷՍ.*—(Մտաւ դրսից, գդակը դրեց սեղանի վրայ, օձիքը վեր քաշած, զզզզուած)։ *Բարի երեկոյ ձեզ։* (Ձեռք է տալիս)։

*ԳԱՅԻԱՆԷ.—Ինչո՞ւ էք այդպէս ուշացել։*

*ԳԱՍՊԱՐ.—Լսել է, որ իրան ծանր պահողի պատիւը շատ կը լինի։*

*ՇՈՒՇԱՆ.—Ինչո՞ւ էք ծաղրում. երևի մի պատճառ է եղել։*

*ՕՎԱՆԷՍ.—Ի հարկէ առանց պատճառի չէր։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Գուցէ խաղալու փող չունէք. ես կը տամ։*

*ՕՎԱՆԷՍ.—Օ՜ ոչ, ի՞նչ էք ասում... ես առանց այն էլ ամաչում եմ...*

*ՇՈՒՇԱՆ.—Այն ժամանակ ես ձեզ համար կածեմ մի բաժակ գինի, որ ամօթին իսկոյն դուրս կը մղի։*

*ԳԱՍՊԱՐ.—Ինչպէ՜ս լաւ էլ գիտէ միջոցը։*

*ԳԱՅԻԱՆԷ.*—(Բարկացած նրա վրայ)։ *Երևի ուզում էր ասել՝ գինին համարձակութիւն կը տայ։*

*ՕՎԱՆԷՍ.—Այդ ճշմարիտ է, խնդրեմ։* (Շուշանիկը լցրեց բաժակը եւ տուեց)։ *Շնորհակալ եմ։*

*ԳԱՍՊԱՐ.—Խմիր հաշտութեան կենացը։ Երևելի բան է հաշտութիւնը։ Երբ մարդ հաշտ է, թէկուզ քարերի վրայ քնի, բայց այնպէս է խռմփացնում, որ կարծես աշխարհի վրայ ոչ հոգս ունի և ոչ էլ անելու մի որևէ բան։*

*ՕՎԱՆԷՍ.—Ոչ. սա մի այնպիսի րոպէ է, որ պէտք է խօսի լռութիւնը։*

*ԳԱՍՊԱՐ.—Խօսի լռութի՞ւնը։*

*ՕՎԱՆԷՍ.—Այո, միմիայն լռութիւնը. և ո՞վ ունի աւելի սուր լեզու, քան թէ լռութիւնը։* (Շուշանին)։ *Ձեր կենացը։* (Խմեց)։

*ՇՈՒՇԱՆ.—Անոյշ։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Բայց ինչո՞ւ ես այդպէս գունատ։*

*ՇՈՒՇԱՆ.—Նա միշտ այդպէս է եղել։*

*ՕՎԱՆԷՍ.—Տեսնում ե՞ք, օրիորդը աւելի լաւ է նկատել։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Իսկ ինչո՞ւ ես օձիքդ վեր քաշել։*

*ՕՎԱՆԷՍ.*—(Իսկոյն ուղղեց)։ *Ա՜խ...*

*ՇՈՒՇԱՆ.—Դէ ասացէ՛ք, ինչո՞ւ էք այսօր ուշացել։*

*ՕՎԱՆԷՍ.—Ես զբաղուած էի մեր տան իրերը կապոտելով։*

ՇՈՒՇԱՆ.—Ի՞նչ է պատահել։

ՕՎԱՆԷՍ.—Այս գիշեր ժամը 3-ին մենք ճանապարհվում ենք։

ՇՈՒՇԱՆ.—Ո՞ւր։

ՕՎԱՆԷՍ.—Անդրկասպեան երկիր։

ՇՈՒՇԱՆ.—Այդպէ՞ս վճռեցիք վերջը։

ՕՎԱՆԷՍ.—Այո, էլ այս քաղաքում անելիք չունենք։

ԳԱՍՊԱՐ.—Ճշմարի՞տ։

ՕՎԱՆԷՍ.—Այո, բանը այդպէս դառաւ։ Հայրս ստիպուած եղաւ փակել արհեստանոցը, այսինքն աւելի շուտ՝ նրան ստիպեցին իր բանուորները։ Անվերջ գործադուլներ, անվերջ պահանջներ. իսկ նա հին մարդ է, չկարողացաւ։

ՇՈՒՇԱՆ.—Ապա ի՞նչ պիտի անի այնտեղ խեղճը։

ՕՎԱՆԷՍ.—Այնտեղ ապրում է մօրս եղբայրը. նա վաղուց է մեզ հրաւիրում։

ՇՈՒՇԱՆ.—Ուրեմն դուք եկել էք մնաս բարեւ ասելու։

ՕՎԱՆԷՍ.—Այո։

ԳԱՅԻԱՆԷ.—Չէ, Օվանէս, մենք քեզ այդպէս հեշտ չենք թողնի. դու մի երկու ժամ դեռ մեզ մօտ կը մնաս, և մենք քեզ փլաւ կը հիւրասիրենք։

ՕՎԱՆԷՍ.—Եթէ միայն ձեզ չեմ ձանձրացնի։

ՇՈՒՇԱՆ.—Ի՞նչ էք ասում. դուք մի լաւ կը զուարճանաք այստեղ։

ՕՎԱՆԷՍ.—Շնորհակալ եմ։

ԳԱՍՊԱՐ.—Բայց մինչ մնաս բարև ասելդ՝ չէ՞ կարելի պատմես, թէ ինչ եղաւ այն գործի դատաստանը։

ՇՈՒՇԱՆ.—Դատաստանը՞. ի՞նչ գործի։

ԳԱՍՊԱՐ.—Չեմ իմանում... Յանցաւորը մի կին է շատ գեղեցիկ. նա փորձել է վիրաւորել իր մարդուն, բայց անզգուշութիւնով, թէ անփորձութիւնով, թէ հէնց իմանալով՝ խփել է ուղիղ սրտի մէջտեղին։

ՇՈՒՇԱՆ.—Ապա էլ ինչո՞ւ են ուշացնում վճիռը։

ԳԱՍՊԱՐ.—Դատաւորը անփորձ երիտասարդ է, ձգձգում է բանը և խելքին զօր է անում։

ՕՎԱՆԷՍ.—Ինչո՞ւ ես մեղադրում դատաւորին։

ԳԱՅԻԱՆԷ.—Ի հարկէ. միթէ կարելի է աչքերը կապած վճիռ հանել։

ԳԱՍՊԱՐ.—Ձեզ ո՞վ ասաց, որ աչքերը կապի. ընդհակառակը, եթէ նա լաւ դատաւոր է, թող աչքերը լաւ բացի։

ԳԱՅԻԱՆԷ.—Երևի ուրեմն բռնելու տեղ չկայ։

ԳԱՍՊԱՐ.—Ոչ: (Ծաղրական եղանակով)։ Բռնելու տեղ կայ, միայն թէ տեսնողները նկատել են, որ ամեն անգամ դատաւորը այդ կնոջ հետ խօսելիս՝ քիչ է մնում նրա առաջ շաքարի նման հալուի։

ՇՈՒՇԱՆ.—Իսկ վկաներ կա՞ն։

ԳԱՍՊԱՐ.—Կայ միայն մի վկայ, բայց այդ շան որդու ուէխին էլ նայող չկայ։ Եւ տեղն է. ինչ է գլուխը քարին տալիս։ Ես լինէի նրա տեղը՝ լեզուն տակից կը կտրէի և կը պապանձուէի... Շատ հարկաւոր է։

ՇՈՒՇԱՆ.—Ինչո՞ւ համար։

ԳԱՍՊԱՐ.—Նրա համար, որ դատաւորը կապում է նրա բերանը։

ՇՈՒՇԱՆ.—Ա՛յ քեզ պատմութիւն։

ՕՎԱՆԷՍ.—(Բռնելով գլուխը)։ Այո, իսկ որ պատմութիւն։ (Թուլանում է)։

ՇՈՒՇԱՆ.—Ի՞նչ պատահեց սրան։

ԳԱՍՊԱՐ.—(Իսկոյն նայելով շիշին)։ Երևի գինին գլխին ընկաւ։

ՕՎԱՆԷՍ.—Ոչինչ... Իսկ որ գինին գլխիս ընկաւ։

ՇՈՒՇԱՆ.—Դատարկ բան է. համեցէք, տղերանց հետ մի քիչ նստէք, իսկոյն կանցնի։

ՕՎԱՆԷՍ.—Եթէ գործ ունէք, դուք համեցէք... ես յետոյ։

ՇՈՒՇԱՆ.—Շատ լաւ. ցանկամ այս գիշեր մի լաւ տանէք։ Ես ձեզ կը սպասեմ։ Մայրի՛կ, մի լաւ ընթրիք պատրաստիր։ (Գնաց խաղասենեակ)։

ԳԱՅԻԱՆԷ.—Զփախչես, Օվանէս, թէ չէ՝ շատ կը նեղանամ, Աստուած վկայ։ (Գնաց խոհանոց)։

## ՏԵՍԻԼ 6

### Գասպար եւ Օվանէս

ՕՎԱՆԷՍ.—(Շուշանի ետեւից)։ Շան ծնունդ, ինչ զօրութիւն կայ քո մէջ։

ԳԱՍՊԱՐ.—Մի զօրութիւն, որի առաջ տղամարդը կատու է դառնում։

ՕՎԱՆԷՍ.—Ի՞նչ ես ուզում ինձնից, միթէ քո սրտում խիղճ չկայ։

ԳԱՍՊԱՐ.—Կար մի կտոր, այն էլ կօշկիս կարկատան դցել տուի։ (Գրպանից հանում է ատրճանակ)։ Չե՞ս կարող ասել ինձ, թէ ինչ է ասում սա իր բացած այս կլորիկ բերանով։

*ՕՎԱՆԷՍ.—Ոչ։*

*ԳԱՍՊԱՐ.—Նա ասում է՝ «Ես պահանջում եմ պատիւ, իսկ եթէ նրան բաւարարութիւն չեն տալիս՝ թրախկ». ահա ինչ է ասում նա։ Չես կամենում։*

*ՕՎԱՆԷՍ.—Հեռացրու ինձանից, փորձանքի մէջ մի գցի ինձ։* (Ուզում է խմել)։

*ԳԱՍՊԱՐ.—Ինչպէս մի թոյլ կին արտասուքով, դու էլ խմելով ես ուզում հանգցնել կրակը։*

*ՕՎԱՆԷՍ.—Եթէ ես այս ճոխութիւնը չէի կարողանալու տալ նրան, ապա ինչ իրաւունք ունեմ պատիւ պահանջելու։*

*ԳԱՍՊԱՐ.—Տեսնում եմ, եղբայր, Արամի փչած քամինները խոր են ազդել քո վրայ։ Է՛հ Օնիկ... աւելորդ է իմ խօսելը։ Գնա։ Այդպիսի մի գործ կատարում են առանց երկար ու բարակ տատանումների, կատարում են յանկարծ, րոպէաբար, իսկ ով այսօր-էգուցի գցեց, պրծաւ։ Գնա, եղբայր, Աստուած բարի ճանապարհ տայ քեզ։ Ինչ ինձ է վերաբերում, ես բանը էլ չեմ երկարացնի, գնաս բարով։* (Գնաց խաղասենեակ)։

**ՏԵՍԻԼ 7**

**Օվանէ (մենակ)**

*ՕՎԱՆԷՍ.—Բայց ես կը տայի քեզ իմ սիրտը, իմ սէրը, իմ երիտասարդութիւնը։ Յիմա՛ր, մի՞թէ դատարկ սէրը ոսկի է, ճոխութիւն, զարդարանք։ Մի՞թէ իմ ողորմելի սէրը կարող էր ձմեռուայ ցրտին տաքացնել նրան, կամ յագեցնել նրան՝ երբ նա քաղցած կը լինէր։ Ես առաջարկեցի նրան մի աննիւթ, աներևոյթ բան, իսկ նա ուզում է ահա թէ ինչ։* (Ցոյց է տալիս սենեակի շքեղութիւնը, խփելով սեղանին)։ *Կործանել, քար քարի վրայ չթողնել, այրել ամեն ինչ, այո՛, բոլորը, բոլորը, և իրան էլ հետը։* (Խմում է մի քիչ, փորձում է նորից)։ *Ոչ։* (Յետ դնելով բաժակը)։ *Հեռու ինձանից թուլութիւնը։ Էլ չեմ կամենում խմել։* (Բացում է ննջարանի դուռը)։ *Ահա, եթէ ես կարողանայի այստեղ, հէնց այստեղ, նրա այս փափուկ անկողնի վրայ։ Եւ եթէ կարելի լինէր առաջ ինձ, յետոյ իրան... Բայց ոչ. առաջ իրան և միմիայն իրան։ Այդպէս է օրէնքը։ Տանջուի՛ր՝ ինչպէս կուզես, բայց նախ աչքովդ տես, թէ ինչպէս կը թափուի նրա տաք-տաք կարմիր արիւնը, ինչպէս սարսափած նա կը գցի քո վրայ իր վերջին հայեացքը, ինչպէս կը փչի նա իր վերջին շունչը։ Ա՛խ, անգութ գեղեցկուհի, ի՞նչու բանը այստեղը հասցրի՛ր։ Յետոյ կը բերեն ինձ մօտ իմ ծնողներին. կը գան*

*կը կանգնեն նրանք իմ առաջ և կը սկսեն նայել ինձ իրանց սպանիչ և յուսահատ հայեացքով։ Յետոյ ես կը շարժեմ ոտքերիս շղթաները և ձայն կը տամ. «Ինչո՞ւ էք եկել։ Չէ՞ որ ձեր օրհասը մօտ է. մի՞թէ ձեզ համար միևնոյնը չէ, թէ ով կածի ձեր ցամաքած դիակների վրայ վերջին 3 բուռ հողը. ինչո՞ւ էք եկել»։ Իսկ նրանք անխօս, քաղցած, ծարաւ, գլուխները ծռած լաց կը լինեն, լաց կը լինեն...։ Ա՜հ, լացէք թէկուզ այնքան, որ արտասուքի տեղ արիւն հոսի ձեր աչքերից... Բայց ես պէտք է անեմ, պէտք է անեմ...*

## ՏԵՍԻԼ 8

**Օվանէս եւ Գրիգոր**

*ԳՐԻԳՈՐ.—Երիտասարդ, չէ՞ք կամենում ինձ հետ մի բաժակ գինի խմել։*

*ՕՎԱՆԷՍ.—Ոչ... ես նոր խմեցի։*

*ԳՐԻԳՈՐ.—Խմենք մէկն էլ։*

*ՕՎԱՆԷՍ.—Չեմ կամենում։*

*ԳՐԻԳՈՐ.—Իսկ եթէ ես առաջարկեմ մի լաւ կենա՞ց։*

*ՕՎԱՆԷՍ.—Ինձ ոչ մի կենաց չի հետաքրքրում։*

*ԳՐԻԳՈՐ.—Նոյնիսկ գեղեցիկ աղջիկների՞։*

*ՕՎԱՆԷՍ.—Արժանի են ամենքը՞։*

*ԳՐԻԳՈՐ.—Այն ժամանակ՝ ով որին սիրում է։*

*ՕՎԱՆԷՍ.—Ես այդպիսին չունեմ։*

*ԳՐԻԳՈՐ.—Դուք ձեզ վա՞տ էք զգում։*

*ՕՎԱՆԷՍ.—Սաստիկ ցաւում է գլուխս։* (Գրիգորը խմեց)*։ Կուիւ պատահե՞ց։*

*ԳՐԻԳՈՐ.—Այո... մի քիչ համբերութիւնից հանեցին ինձ։*

*ՕՎԱՆԷՍ.—Ի՞նչ քաջն էք եղել։*

*ԳՐԻԳՈՐ.—Ով գիտէ կեանքի արժէքը, նա իմ աչքում աւելի բարձր է, քան քաջը։*

*ՕՎԱՆԷՍ.—Հըմ... դուք խելօք էլ էք եղել... ես այդ չը գիտէի։*

*ԳՐԻԳՈՐ.—Այո, շրջելով Ռուսաստանի տօնավաճառները և ամեն տեղ թուղթ խաղալով՝ ես ձեռք եմ բերել մեծ փորձառութիւն։*

*ՕՎԱՆԷՍ.—Եւ ուրեմն գիտէք, որ խելքը առանց պատուասիրութեան վախկոտութիւն է։*

*ԳՐԻԳՈՐ.—Լաւ է լինել խելօք և վախկոտ, քան յիմար և պատուասէր։*

ՕՎԱՆԷՍ.—Ահա թէ ինչ քնքշութիւններով էք դուք գալիս դուք կանանց։

### ՏԵՍԻԼ 9

**Օվանէս, Շուշան եւ վերջում Գասպար**

ՇՈՒՇԱՆ.--(Մտաւ խաղասենեակից)։ Կարող են նկատել, որ տանելը և փախչելը ան... անյարմար բան է։

ԳՐԻԳՈՐ.—Ասա՝ ուղղակի անազնւութիւն է, և ես քեզ կասեմ, որ ես փախչողը չեմ։ Կենացդ։ (Խմեց եւ գնաց խաղասենեակ)։

ՕՎԱՆԷՍ.—Վերջապէս մենք մենակ ենք։

ՇՈՒՇԱՆ.—Դուք այդ շա՞տ էիք ուզում։

ՕՎԱՆԷՍ.—Է՛հ, չէ՞ որ վերջին երեկոն է, որ ձեզ տեսնում եմ։

ՇՈՒՇԱՆ.—Խմենք մէկ մէկ։

ՕՎԱՆԷՍ.—Ձեզ հետ թէկուզ մեռնել։

ՇՈՒՇԱՆ.—Ինչո՞ւ մեռնել... մեր կեանքի գարունը նոր է սկսուել, մենք դեռ երիտասարդ ենք։ (Ածեց)։

ՕՎԱՆԷՍ.—Ոչ, ես այլեւս երիտասարդ չեմ... Երգուեց իմ երգը։ Ա՛յ, դուք՝ այդ ուրիշ բան է. դուք օր-աւուր բացվում էք ինչպէս մի վարդ։

ՇՈՒՇԱՆ.—Ա՛խ մի վա՜րդ, որը պէտք է յետոյ թառամի։ Է՛հ, խմենք։

ՕՎԱՆԷՍ.—Խմենք։

ՇՈՒՇԱՆ.—Դուք գնո՞ւմ էք։

ՕՎԱՆԷՍ.—Այո՛, գնում եմ։

ՇՈՒՇԱՆ.—Ուրեմն գնա՛ք բարև... բարի ճանապարհ... (զարկեցին ... խմեցին ծիծաղելով)։

ՕՎԱՆԷՍ.—Եթէ կարելի լինէր, ես կպատժէի նրան, ով տուել է ձեզ այդ գեղեցկութիւնը։

ՇՈՒՇԱՆ.—Մի՞թէ կուզէիք, որ ես տգեղ լինէի։

ՕՎԱՆԷՍ.—Գոնէ այն ժամանակ ես ձեզ այդպէս չէի սիրի։

ՇՈՒՇԱՆ.—Իսկ դուք դեռ ինձ սիրում ե՞ք։

ՕՎԱՆԷՍ.—Դեռ դուք հարցնում է՞լ էք։

ՇՈՒՇԱՆ.—Ուրեմն եթէ սիրում էք, խմենք մէկն էլ։

ՕՎԱՆԷՍ.—Ա՛հ, թէկուզ տասն-մէկը, միայն թէ այրուած սիրտս կարողանար մի փոքր զովութիւն զգալ։

ՇՈՒՇԱՆ.—Ա՜։ Մի նայէք ինձ այդպէս. դա սիրողի աչքեր չեն։

ՕՎԱՆԷՍ.—Աչքե՞րս էլ են վատացել աչքերիդ։ Մի ժամանակ այդպէս չէիք ասում։

ՇՈՒՇԱՆ.—Իսկ դուք մի ժամանակ ինձ այդպէս չէիք նայում։ Բացի այդ, չէ՞ որ ես մի անփորձ խենթուլիկ էի։

ՕՎԱՆԷՍ.—Ոչ, դուք խենթուլիկ չէիք, այլ ինձ էիք խենթացրել։

ՇՈՒՇԱՆ.—Ոչ, ոչ, ոչ. ես հէնց հիմա էլ խենթուլիկ եմ... այնպէս չէ՞. ա՜յ տեսէք։ (Յանկարծ համբուրում է նրան)։ Ա...

ՕՎԱՆԷՍ.—Ի՞նչ էք անում...

ՇՈՒՇԱՆ.—Այ, հիմա ինձ դուր եկան ձեր աչքերը. այդ ի՞նչ է, արտասո՞ւք։ Մի՞թէ դուք կամենում էք լաց լինել։

ՕՎԱՆԷՍ.—Ա՛հ... աւելին, աւելին։

ՇՈՒՇԱՆ.—Ի՞նչ է պատճառը։

ՕՎԱՆԷՍ.—Դո՛ւք։

ՇՈՒՇԱՆ.—Ե՞ս։

ՕՎԱՆԷՍ.—Այո՛, դո՛ւք։ Ինչո՞ւ համար ստիպեցիք ինձ բացել ձեր առաջ իմ սիրտը։ Ինչո՞ւ ինձ գաղտնի համբոյրներ տուիք և յետոյ փշրեցիք իմ յոյսերը... իմ ապագայ ողջ կեանքը։ Ինչո՞ւ ցեխի մէջ շպրտեցիք, ինչո՞ւ ոտքներիդ տակ տրորեցիք իմ սիրտը։

ՇՈՒՇԱՆ.—Ես կարծեցի, թէ դուք շնորհակալ կը լինէք... որ ես համբուրեցի ձեզ... որ թոյլ տուի ձեզ ինձ սիրել, գաղտնի համբոյրներով ծածկել թշերս... այն ժամանակ ես ձեզ ոչինչ չասացի...

ՕՎԱՆԷՍ.—Կեղտի մէջ էլ լինես ընկած, բայց դու դեռ մի անմեղ վարդ ես...։ Ի հարկէ շնորհակալ եմ, դուք իրաւունք ունէք. չէ՞ որ այն ժամանակ մեր մի քանի ժամերն էլ մի ամբողջ դրախտ, մի եդեմական երջանկութիւն էին ինձ համար։

ՇՈՒՇԱՆ.—Տեսնում է՞ք. իսկ դուք այսօր կշտամբում էք ինձ։

ՕՎԱՆԷՍ.—Իսկ յետո՞յ... Ինչի՞ ամեն բան փոխուեց յետոյ։

ՇՈՒՇԱՆ.—Մի՞թէ ես իմանում եմ, թէ ինչո՞ւ փոխուեց... Գուցէ դեռ էլի՛ շատ բան է փոխուելու։ Ես անմեղ եմ, Օվանէս։

ՕՎԱՆԷՍ.—Զգիտեմ իրօ՞ք անմեղ ես թէ՞ միայն ձևանում ես անմեղ։

ՇՈՒՇԱՆ.—Ա՜խ, Աստուած վկայ՝ անմեղ եմ... անփորձ։ Մի բարկանայ ինձ վրայ... Բաժանվում ենք միմեանցից, և ես չեմ ուզում, որ դուք ինձնից խռով հեռանաք։ Ուրեմն խմենք

մէկ մէկ էլ։ (Ածեց)։ Սա ձեր կենացը։

ՕՎԱՆԷՍ.—Ի հարկէ ես գիտեմ, թէ ինչ սրտով կը խմէք դուք իմ կենացը։

ՇՈՒՇԱՆ.—Չէ՞ որ ես խմում եմ անկեղծ սրտով, խմում եմ՝ ինչպէս բարեկամ. միթէ ես մարդ չեմ, միթէ ես սիրտ չունեմ... Ներեցէք ինձ, Օվանէս, նայեցէք ինձ մի եղբօր աչքով. հաշուեցէք, որ ես մի երեխայ եմ... որ չգիտէ իր արածը։ Ինչո՞վ է մեղաւոր մի անզօր, ջրի վրայ ընկած ծաղիկ, որին քամին տանում է այնտեղ, ուր որ ինքն է գնում... Միթէ չէք հաւատում, որ իմ խօսքերը անկեղծ են։

ՕՎԱՆԷՍ.—Օ՛, ինչպէս չէ... Մի ժամանակ, երբ ես կատակով ասում էի, որ չեմ հաւատում ձեր սիրոյն, դուք փաթաթւում էիք պարանոցիս և անթիւ համբոյրներով էիք հաւատացնում։

ՇՈՒՇԱՆ.—Ես այժմ այդ չեմ կարող... Իսկ եթէ դուք կամենաք, ես ընդդէմ ոչինչ չունեմ։

ՕՎԱՆԷՍ.—(Փորձեց)։ Ոչ, ոչ, ոչ։ Ես իրաւունք չունեմ կպչելու ուրիշի սեփականութեան։ Այն ժամանակ դուք իմն էիք։

ՇՈՒՇԱՆ.—Սեփականութիւն... չեմ կամենում լսել այդ խօսքը։ Ես կամենում եմ ազատ լինել, ինչպէս ազատ է իմ հոգին, որ ոչ ոքի չի պատկանում։ Ես կամենում եմ միշտ լինել ինչպէս մի թռչուն... մի թիթեռնիկ...

ԳԱՍՊԱՐ.—(Գլուխը հանում է խաղասենեակի դռների միջից եւ նայում)։

ՕՎԱՆԷՍ.—Ո՞վ կարող է հասկանալ և իմանալ ձեր գինը այնպէս, ինչպէս կարող էի իմանալ ես։ Առէք դանակը և խփեցէք սրտիս մէջտեղին, և ես ժպիտը դէմքիս կը գլորուեմ ձեր ոտքերի տակ։

ՇՈՒՇԱՆ.—Օ՛, ոչ, ոչ։ Ես այդպէս անգութ չեմ կամենում լինել։ Ապրենք ամեն մէկս մեզ համար։ Հաւատացէք, Օվանէս։ Ես խղճում եմ ձեզ, բայց ինչ անեմ, երբ անզօր եմ մի բան անելու։ Կը գաք մի քանի տարուց յետոյ և կը տեսնէք ձեր գեղեցիկ հարսնացուին թառամած, թոշնած և ինքներդ էլ կը զարմանաք, որ ինձ մի ժամանակ սիրելիս էք եղել։ Էն ժամանակ էլ չէք յանդիմանի ինձ... այլ ով գիտէ... գուցէ բոլորովին երես կը դարձնէք։ Բայց եթէ կարծում էք, որ ես անտէրունտիրական, ամենքից մոռացուած, քաղաքի ծայրերում կորածների շարքը կը լինեմ ընկած, կամ թէ պառաւութեանս խորշոմները ծածկելու համար երեսս շպարած, լիրբ անամօթ ժպիտը դէմքիս, որ ինձ տեսնողը երեսը շրջի մի կողմ, զզուանքով

Թքի և հեռանայ. երբէք, երբէք։ Ես յաւիտեան պէտք է գեղեցիկ մնամ, որի տեսքից բոլոր երիտասարդները գժուեն, կամ Թոյն կընդունեմ և այնպէս կը մեռնեմ... Խմենք... արբենք, Օվանէս։

ՕՎԱՆԷՍ.—Ի՞նչ պատահեց ձեզ... ուշքի եկէք...

ՇՈՒՇԱՆ.—Ոչ ձիւն է եկել, ոչ անձրև, իսկ ես Թրջուած եմ, նշանուած... (Ծիծաղելով)։ Օվանէս, Թողրու ինձ... ես արբած եմ... տար ինձ. ես քոնն եմ։

ՕՎԱՆԷՍ.—Այնտեղ ձեզ կը լսեն...

ՇՈՒՇԱՆ.—Տար ինձ իմ ննջարան և տես Թէ ականջիդ ինչե՜ր կասեմ... (Ծիծաղ)։

ՕՎԱՆԷՍ.—Այո, այո՛, գնացէք, պառկեցէք...դուք իսկ որ արբած էք։

ՇՈՒՇԱՆ.—(Երգելու պէս)։ Ա՛ռ ինձ... տա՛ր ինձ...

ՕՎԱՆԷՍ.—Գնանք... ես տանեմ ձեզ..

ՇՈՒՇԱՆ.—(Նոյն)։ Բարի ճանապա՜րհ...

ԳԱՍՊԱՐ.—(Ծածուկ)։ Տղամարդ չի, այլ որդն, որ միայն սողալ գիտէ, գալարուել...

ՕՎԱՆԷՍ.—(Տանում է Շուշանին ննջարան, ճանապարհին ետեւից հանելով դանակը. եւ երբ նրան զգում է մահճակալի վրայ, իսկոյն հասցնում է մի քանի վէրքեր)։ Ահա քեզ բարի ճանապարհ։

ՇՈՒՇԱՆ.—(Արձակում է մի ճիչ եւ մարում)։

ՍԱՀԱԿ.—(Այդ ճչի վրայ բեմի ետեւից ձայն է տալիս)։ Է՞յ։

ՕՎԱՆԷՍ.—Ամէն ինչ վերջացաւ։ Գեղեցիկ էր և գեղեցիկ էլ մեռաւ։ (Յանկարծ բռնում է գլուխը եւ գալիս է բեմ)։ Սարսափելի՜ է... ի՜նչ արի ես .. Նրա արիւնը... ա՜հ։ (Սրբում է ձեռքերը, որի ժամանակ ձեռքից ընկնում է արիւնոտ դանակը յատակի վրայ)։ Պէտք է փախչել... բայց ու՞ր կը փախչես նրանցից...։ (Վերցնում է գտակը եւ դնում գլխին։ Լսվում է շոգենաւի սուլոց)։ Դէպի շոգենաւ, փախչեմ շոգենաւ...։ (Գնում է աջ դռնով)։

## ՏԵՍԻԼ 10

**Գասպար, Սահակ, Գայիանէ, Մարգար, Գրիգոր եւ այլք**

ՍԱՀԱԿ.—(Նոյն րոպէին, երբ Գասպարը վերցնում է դանակը եւ մտնում ննջարան ու դռները պինդ ծածկում, Սահակը հագած ամառային վերարկու, վրայից շորի գօտի կապած, գլխին պիտակ շոր, կուրծքը բաց, ձեռքին ճրագ, սպիտակ վարտիկով

եւ հողաքափերով մտնում է եւ այդ տեսնելով վազում դէպի ննջարանի դուռը)։ *Բաց արա դուռը, էյ…*

ԳԱՍՊԱՐ.—(Չի թողնում, որ դուռը բացուի)։

*ՍԱՀԱԿ.—Բաց արա դուռը ասում եմ։ Է՞յ, ով կայ այնտեղ։ Շուշանի՛կ։ Ձայն չկայ։ Էյ, օգնեցէք, գողեր, գողեր։*

ԳԱՅԻԱՆԷ.—(Մտնում է խոհանոցից, միւսները խաղասենեակից)։ *Ի՞նչ է պատահել…։*

*ՍԱՀԱԿ.—Գող, գող, գող. ես իմ աչքով տեսայ, թէ ինչպէս մէկը մտաւ այստեղ։*

*ԳԱՅԻԱՆԷ.—Ա՛… դրան վրայ արիւն…*

*ՍԱՀԱԿ.—Սպանել են երեխայիս… օգնեցէ՛ք…*

*ԳՐԻԳՈՐ.—Էյ, ով կայ այնտեղ։*

ԳԱՍՊԱՐ.—(Ներսից)։ *Այստեղ ես եմ…*

*ԱՄԵՆՔԸ.—Գասպարն է… Գասպարը։*

*ԳՐԻԳՈՐ.—Բացէք, թէ չէ՛ ես կը կոտրեմ դուռը։*

ԳԱՍՊԱՐ.—(Յանկարծ բացում է դուները)։ *Ճանապարհ։ Հեռու ամենքդ։* (Ամենքը քաշվում են այս ու այն կողմ)։

ԳԱՅԻԱՆԷ.—(Վազում է ներս ննջարան եւ ճչալով ընկնում աղջկայ դիակի վրայ)։

ԳԱՍՊԱՐ.—Արիւնոտ դանակը վեր բարձրացնելով)։ *Յայտնեցէք պօլիցիային, որ ես սպանեցի նրան։*

ԳՐԻԳՈՐ.—(Ուզում է յարձակուել, բայց հանդիպելով Գասպարի հայեացքին՝ կանգ է առնում)։ *Ինչո՞ւ համար, անմիտ եբիտասարդ։*

ԳԱՍՊԱՐ.—*Որովհետեւ ես սիրում էի նրան։*

**ՎԱՐԱԳՈՅՐ**

*ԱԼ. ԱԲԷԼԵԱՆ*

*ՎԵՐՋ*

---

*
* *

Այստեղ են ծնվում, այս չորս պատի մէջ
Բաղձանք ու յոյսեր, յոյզեր ու տենչեր...
Այստեղ է ծնվում սիրոյ կայծն անշէջ,
Որ բորբոքում է իմ հոգու լարեր։
    Պատանեկութեան խանդերով վառուած
    Առաջ եմ գնում ես ընտրած ուղիս...
    Չնայած տարիք լուռ թեւակոխած՝
    Սպիտակն է փայլում վաստակած գլխիս։
Այս չորս պատի մէջ... ինչպէս քաջ կռւում
Զինուորն է կուրծքը գնդակին տալիս...
Ապրում է միտքս... եղբօրս վշտում
Իր վիշտը տեսնում... տանջվում ու լալիս...
    Եւ չորս պատի մէջ դիս անշնչացած՝
    Վաղը կը գրկեն հողի սև կոյտեր...
    Յոյս ու բաղձանքներ կրծքիս մէջ մեռած՝
    Էլ չեն բորբոքուի իմ ցայտող յոյզեր...
Բայց գոնէ կեանքիս ամբողջ ընթացքում
Ապրել եմ եղբօրս կեանքով ու խինդով...
Եղել կարեկից Նրան վշտերում,
Ու.. յաւէտ լռել... Նրան սիրելով...

ԼԵՒՈՆ ԳՐԻԳՈՐԵԱՆՑ

---

# ՂՐԻՄԻ ՀԱՅԵՐԸ*)

## VI

Թաթարաց և օսմանցոց իշխանապետութեան այս շրջանը մի տխուր պատմական էջ է Ղրիմի կուլտուրական և արդիւնաբերական կեանքի զարգացման տեսակէտից, երբ երկրի տէրերը՝ խաները, միացած աւազակաբարոյ Թիւրքերի հետ, գենովացիների և հայերի մօտ 200 տարուայ ընթացքում տոկուն ջանքերով կանգնեցրած հոյակապ կուլտուրական շէնքը, յամառ աշխատանքի արդիւնքը հետզհետէ աւերում ու անտէրութեան են մատնում։ Միակ գովելի կուլտուրական նորամուծութիւնը—շերամապահութիւնը—որ բերել էին նրանք իրանց հետ Ասիայից՝ առաջին անգամ Ղրիմ ոտք կոխած ժամանակները, ա՛յն ևս ժամանակի ընթացքում մոռացուեց, և տնկուած բազմաթիւ թթենիները վայրենացան և չորացան դաշտերում...

Հաջի-Գիրէյի գահակալութեան օրից Թաթար խանութիւնը կազմակերպվում է և, օրէնքներ սահմանելով, երկրի կառավարութիւնը կարգ ու կանոնի տակ է դնում։ Այդ գործին մեծապէս նպաստում են օսմանցիները, որոնք եկել էին գենովացիներին Ղրիմից վանելու համար և, օգտուելով Թաթարների թուլութիւնից, հաստատուել էին իրանց ցանկացած տեղերում (գենովացիներին պատկանած կէտերում)։ Օսմանցիք տիրելով Ղրիմի հարաւային ծովափին՝ կրկին զրկեցին Թաթար խանութիւնը իր գլխաւոր եկամտից։ Այդ ժամանակ խանութիւնը բաժանուած էր 48 ղադըլըքի, որոնցից 4-ը (ամենահարուստը և ամենաարդիւնաբերողը) գրաւել էին օսմանցիք։ Քէֆէն, Ենի-Կալէն, Սուդակը և Մանգուբը իրանց շրջակայ քաղաքներով ու գիւղերով, թւով 95 հատ, դարձան օսմանցիների սեփականութիւնը։

Մնացած 44 ղադըլըքները կառավարվում էին խանից

---

*) «Արօր» №№ 9 և 10—11.

նշանակուած ղադըներով—դատաւոր—որոնք կոչվում էին «ղադը-էսքեր»։

Խաների կառավարութիւնը թէև ազնուապետական միապետութիւն էր, սակայն նրանց իրաւունքները սահմանափակուած էին պետական խորհրդով կամ «դիւանով»։ Այդ դիւանը երկրի բէյերից, միրզաներից և մուֆթիից կազմուած մի բարձրագոյն խորհրդարան էր, որտեղ վճռվում էին պետական ծանրակշիռ հարցեր՝ վերաբերեալ տնտեսականին, պատերազմականին և վարչականին։

Ամեն անգամ խանը պատերազմի պատրաստութիւն տեսնելիս ժողովում էր իր դիւանի անդամներին խորհրդի։ Առաջուց յայտնում էր իր կամքը «դիւան-էֆենդիին», որը բէյերից էր լինում սովորաբար*) և որը ժողովին զեկուցանում էր քննուելիք խնդիրը։ Դիւանի դահլիճի վերին մասում շինուած էր խորհրդարանին անտեսանելի մի պատուհան, որտեղից խանը հետևում էր վիճաբանութիւններին։

Շատ անգամ բռնակալ խաները լսելով իրանց կարծիքների հակառակ դատողութիւններ դիւանում՝ երկրորդ օրը զեկուցանողներին սոսկալի տանջանքների էին ենթարկում կամ բանտարկում։

Սակայն ինքը խանն էլ մեծ կախումն ունէր բէյերից, որոնք սերվում էին Ղրիմը գրաւող ու իրանց մէջ բաժանող «եօթն ուլուսների» հին ազնուական սերունդից։

Ամեն մի բէյ իր բէյլիկում միանգամայն ազատ ինքնակալ էր և կառավարում էր իր ցանկութեան համեմատ, միայն՝ պատերազմի ժամանակ նա պարտաւոր էր խանին օգնութեան երթալ զօրքով, որի հրամանատարը դարձեալ ինքն էր, և բացի այդ՝ մի սայլ պաքսիմատ և 1000 պիաստր փող պէտք է վճարէր։

Այդ հին և նշանաւոր բէյական տոհմերը—Շիրին, Բարին, Սեդ-ջեվադ, Մանսուր, Արգին, Ղպչաղ և Եաշլաւ—այնքան մեծ հեղինակութիւն ունէին կառավարող շրջաններում, որ կարողանում էին մինչև անգամ խաներին գահընկէց անել ու իրանց կամեցածին նստեցնել։ Այդ իսկ պատճառով խաները ակնածում էին նրանցից, մեծ պատիւ էին ցոյց տալիս ու շատ անգամ նրանց խորհրդով շարժվում։

Խանի տեղակալն էր «կալգա-սուլթանը», որ միևնոյն ժամանակ և ընդհանուր դատաւոր էր։ Սա բացի իր կառավարած

---

*) Այդ պաշտօնը կատարում էին Շիրին տոհմի բէյերը։

բէյլիկի—(Ակ-Մէչէթի*)—արդիւնքներից ստանում էր նաև ռոճիկ 500 քիսա ոսկի ամեն տարի խանից։ Տէրութեան երրորդ բարձր պաշտօնեան կոչվում էր «Նուրըէդին-սուլթան» և յաջորդում էր կալգա-սուլթանին, վերջինիս մահից յետոյ։ Սա էլ ստանում էր իր բէյլիկի—Ղարասուբազարի—արդիւնքից ջոկ՝ 250 քիսա ոսկի։ Չորրորդ նշանաւոր անձն էր «օր-բէյը»։ Այդ պաշտօնը յանձնվում էր տէրութեան ամենահաւատարիմ և խանին անձնուէր բէյին, որովհետև Ղրիմի խանութեան վրայ արշաւելու միակ ճանապարհը ցամաքի կողմից Պիրեկօպի նեղ պարանոցն էր, որը և պաշտպանուած էր Օր-գափու նշանաւոր բերդով։

Բէյերի կրտսեր սերունդը կոչվում էր «էմիր-զադէ», որի կրճատ ձևը ներկայումս ասում են «միրզա» կամ «մուրզա»։ Դրանց թիւը շատ էր, և արքունական պաշտօնները մեծ մասամբ դրանց ձեռքին էին գտնվում։

Խաները, ինչպէս արդէն ասացինք, մշտական զօրք չունէին և արշաւանքի կամ պատերազմական դրութեան միջոցին ժողովում էին իրանց բէյերին և մրզաներին զօրքերով և արշաւում։

Որպէս Ղրիմին սահմանակից, ամենից յաճախ թաթարների յարձակումներին ենթարկվում էր Մալօրուսիան, որը շատ մեծ վնասներ էր ստանում այդ արշաւանքներից։ Իրաւ է, շատ անգամ նոյն կերպի արշաւանքներով պատասխանում էին և Մալօրուսիայի կազակները նրանց, սակայն մինչև կազակների հաւաքուելը՝ թաթարները արդէն յետ դարձած էին լինում ու պատրաստ՝ Պերեկօպի հզօր ամրութիւնների ետևում ընդդիմադրելու։

Այդ իսկ պատճառով կազակները Մալօրուսիայի սահմաններին շինել էին պահապան գիւղեր ազդանշաններով։ Այդ ազդանշանները մեծամեծ դէզեր էին, որոնք հրդեհվում էին, երբ թշնամին երևում էր այդ կողմերում։ Անմիջապէս հարևան գիւղերն էլ նրանց օրինակին հետևելով՝ այրում էին իրանց դէզերը ու այսպիսով կարճ միջոցում ամբողջ Մալօրուսիան իմանում էր, թէ իրան վտանգ է սպառնում։ Տենդային արագութեամբ զինուորական գնդերը կազմվում էին ու արշաւում եկուորների վրայ։

Սակայն այդ բոլոր նախազգուշական միջոցների դէմ թաթարները նորանոր խորամանկութիւններ էին բանեցնում։ Նրանք մօտենալով թշնամու սահմաններին բաժանվում էին

---

*) Այժմ Սիմֆէրօպօլ։

մանր-մունր գնդերի և այնպէս առաջ խաղում, և մի որոշուած կէտի վրայ զանազան կողմերից յանկարծ յարձակվում։

Պէտք է ասած, որ խաները իրանք բոլոր արշաւանքներին չէին մասնակցում, այլ ուղարկում էին կամ Նուրըէդին-սուլթանին, որը հրամանատար էր 40,000 զինուորի (կամ աւելի պակաս), կամ կալգա-սուլթանին, որ կառավարում էր 50,000 հոգուց աւելի բաղկացած բանակը։ Իսկ երբ խանը ինքն էր շարժվում, այն ժամանակ նա անցնում էր 100,000 հոգուց ոչ պակաս «ղօշի» կամ հեծելազօրքի գլուխը և արշաւում տէրութիւնների վրայ, ինչպէս, օրինակ, կամ Մօսկօվի թագաւորութեան, կամ Աստրախանի խանութեան և կամ Լեհաստանի վրայ, և այլն։

Իրանց հետ բերած գերիներին կամ ստրուկ—«եսիր»—էին դարձնում և կամ ծախում էին զանազան կողմերից եկած գերեվաճառներին, գլխաւորապէս Կ. Պօլսի փաշաների և մեծամեծների ներքիններին։ Ինչ վերաբերում է պատուաւոր գերիներին, խանը նրանց պահել էր տալիս առանձին և միայն մեծ փրկանք ստանալուց յետոյ արձակում։

Այդպիսիների գլխաւոր արգելարանն էր Չուֆուղ-Կալէն (հրէական բերդը), որի մութ նկուղներում բոլոր բանտարկեալները անխտիր սոսկալի տանջանքների էին ենթարկվում։

Այսպէս, օրինակ, բօեարին Շերեմետիեվը 20 տարի բանտարկուած է եղել վերոյիշեալ բերդում, նոյնպէս և գեթման Պօտօցկին, որ երկար ժամանակ արգելուած է եղել այդ տեղերում։

Չուֆուղ-Կալէի բանտի մէջ կային երկար քարէ նստարաններ, որոնց վրայ պառկեցնելով բանտարկեալներին՝ գործիքներով սկսում էին սեղմել։ Ապա երկաթէ ճանկերով կաշին սկրթում կամ աքցանով եղունգները պոկոտում։ Մահուան դատապարտուածներին, մեծ մասամբ, առանց այլևայլի գլորում էին քարէ վաննաների մէջ ու գլխատում, և ապա գլուխն ու մարմինը դէպի խոր անդունդը բացուող պատուհանից շպրտում։ Իսկ շատ անգամ էլ ուղղակի անօթի թողալով ու չդիմանալով սոսկալի տանջանքներին՝ բանտարկեալները մեռնում էին, մէկ էլ լոյս աշխարհ չտեսած։

Վճիռների մեծ մասը կայացնում էին ղադըները, որոնց խօսքը օրէնք էր և որոնք համարվում էին թաթարների մէջ միանգամայն արդարադատ ու անմեղ։ Իսկ դատն էլ երկար չէր տևում, կատարվում էր շատ հասարակ ձևով։ Նախ ղադըն լսում էր մեղադրողին և անմիջապէս վճիռ կայացնում։ Յաճախ

*պատահում էր, որ վճիռը դեռ նոր արձակուած՝ դահիճը արդէն վերցնում էր մեղապարտին ու տանում պատժարան։ Բախչէսարայի միջով անցնող Չուրուք-Սու գետակի վրայ, ուղիղ խանի պալատի դարպասի առաջ, շինուած կամուրջն էր գլխաւորապէս գլխատման վայրը, որտեղ կտրելով դատապարտեալի գլուխն ու մարմինը՝ դնում էին մի տոպրակի մէջ ու ջուրը նետում։ Եթէ գլխատուողը մահմեդական էր, գլուխը դնում էին թևի տակ, իսկ եթէ այլազգի՝ գլուխը տեղաւորում էին ոտների արանքում ու այնպէս գցում։*

*Տարօրինակ էր նաև կախաղան բարձրացնելու սովորութիւնը։ Դահիճը վերցնում էր դատապարտեալից մի քիչ փող, գնում նրա համար մի պարան ու նրանով էլ կախում մօտիկ գտնուած ծառից կամ պատշգամբից։ Իսկ եթէ կախաղանի արժանացողը բէյ էր կամ մրզա, նրան խանը ուղարկում էր մետաքսէ պարան, որ ինքը յօժարակամ ինքնասպանութիւն գործէ։*

*Այս ձևով էր կատարվում թաթարական արդարադատութիւնը։*

—

*Խանն ու բէյերը իրանց հպատակներից վերցնում էին երեք տեսակ հարկ. 1) «ուշուր»—տասանորդ բոլոր պտուղներից (այգիներից, պարտէզներից ու վարելահողերից), 2) «զիքեաթ» —$^1/_5$ մասը՝ թռչուններից և անասուններից և 3) «պեսիր»—հոգևոր հարկ։*

*Հասկանալի է, որ գլխաւոր արդիւնքն էր «ուշուրը», և այդ պատճառով խաները վերցնում էին դրա $^1/_8$ մասը։*

*Այս հարկերը խաները կապալով էին տալիս մասնաւոր անձանց (գլխաւորապէս կարայիմներին), որոնք և հաւաքում էին գիւղից-գիւղ, քաղաքից-քաղաք ման գալով ու սովորական հարկի տեղ կրկնակին հաւաքելով։*

*Այդ հարստահարութիւններին նոյնպէս ենթարկուած էին և հայերը, որոնք պարապում էին Ղրիմում վաճառականութեամբ, երկրագործութեամբ, պարտիզպանութեամբ, այգեգործութեամբ և արհեստներով։*

*Սակայն ժամանակի ընթացքում այդ ճնշումներն ու հարստահարութիւնները թեթևացան, ու թէ խաները, թէ բէյերը և թէ մրզաները՝ տեսնելով հայ աշխատաւորի իրանց մատուցած բարիքները, մանաւանդ նրա յարմարուելը ժամանակի*

պահանջներին, միևնոյն ժամանակ յաճախ կարիք զգալով հայ հարստի օգնութեան, սկսեցին աւելի բարեացակամ վերաբերուել դէպի հայերը, և բարեկամական կապերը ժամանակի ընթացքում այնքան ամրացան, որ երբ հայերին Ղրիմից գաղթեցնելու հարցը ծագեց, թէ թաթարները և թէ հայերը միաձայն բողոք բարձրացրին։

Բայց եզակի կրկնուող հարստահարութեանց դէպքերը անշուշտ անպակաս չէին խանութեան մէջ, որոնց մասին է գրում իր պաշտօնական հաղորդագրութեան մէջ ռուսաց րեզիդենտ Նիկիֆորը Բախչէսարայից 1764 թուին։ Րեզիդենտը, նկարագրելով Կրիմ-Գիրէյ խանի գործած անօրէնութիւնները, պատմում է, թէ ինչպէս վերջինս իր «Աշլամա» կոչուած պալատը շինելիս՝ աշխատեցրել է օրական 200—300 հայեր ու յոյներ և ոչ մի փարա վարձ չէ վճարել։ Բացի այդ՝ հայերից, յոյներից և կարայիմներից սովորութիւն է ունեցել բռնութեամբ փող կորզելու և այլևս չվերադարձնելու։

Րեզիդենտի հաղորդագրութիւնից պարզվում է նաև, որ Կրիմ-Գիրէյը բռնութիւններ է գործ դրել ոչ միայն հայերի և յոյների վրայ, այլ և բոլոր հպատակ ժողովուրդների, որի համար և արժանի պատիժն է ընդունել, այսինքն՝ սուլթանի հրամանով գահընկէց է լինում ու նրա տեղ նստում է խան Սելիմ-Գիրէյը։

Բայց րեզիդենտ Նիկիֆորի ժամանակները արդէն խանութիւնը իր ծանր օրհասական ճգնաժամի մէջ էր գտնվում։ Օսմանցոց և ռուսների անընդհատ պատերազմները թաթարներին էլ դժուարին կացութեան մէջ էին ձգել։ Ռուսները քանիցս ոտնակոխ էին արել Ղրիմը և մինչև իսկ գրաւել Քէֆէն ու Կերչը։ Եւ միայն պաշարի պակասութիւնն էր ստիպել նրանց յետ քաշուել։ Արդէն խանի պալատում իսկ երկու կուսակցութիւն—ռուսական և օսմանական—կատաղի կռիւ էին մղում և աշխատում իրանց կառավարութեան ցանկալի խանին նստեցնել գահը։ Պարզ է, որ այդ բոլոր խռովութիւններն ու ինտրիգները մանրամասն զեկուցվում էին ռուսաց արքունիքին րեզիդենտների միջոցով, և միայն յարմար մոմենտի էր սպասվում Պետրոս Մեծի վաղեմի ծրագիրը իրագործելու համար՝ Ղրիմը միացնելու Ռուսաստանին։

## VII

*1744-ի յուլիսի 21-ին Քուչուք-Կայնարջի կոչուած գիւղում, 6-ամեայ պատերազմից յետոյ, ռուսները և օսմանցիք խաղաղութեան դաշն կապեցին: Այդ դաշնագրութեան գլխաւոր կէտերից մինն էլ այն էր, որ Ղրիմի խանութիւնը ճանաչվում էր օսմանեան գերիշխանութիւնից անկախ մի տէրութիւն: Կարծես այդ վճռով գոհ պիտի մնային թաթարները, սակայն թէ օսմանցիք և թէ թաթարները պարզապէս հասկանում էին ռուսների յետին միտքը: Այդ անկախութիւնը թոյլ էր տալիս ռուսներին ազատօրէն խառնուել Ղրիմի խանութեան գործերին՝ առանց երկիւղ կրելու օսմանցիների միջամտութիւնից, մանաւանդ որ վերջինս, որպէս պարտուած թշնամի, կարող էր միայն իր բողոքներով պատասխանել ռուսների ամեն մի ակտիվ քայլին:*

*Ռուսաց արքունիքի առաջին գործն եղաւ, պատերազմից յետոյ, բարձրացնել Ղրիմի խաների գահը այնպիսի մէկին, որ ռուսաց քաղաքականութեան կողմնակից լինելով՝ նպաստէր սրանց ցանկութիւններին: Այդպիսին դժուար չէր գտնել: Շահին-Գիրէյը, որ Պետերբուրգում խանի ներկայացուցիչն էր համարվում, օգտուելով թաթարների ներքին խռովութիւններից՝ խնդրեց կայսրուհի Եկատերինա Բ.-ին տալ իրան օգնական զօրք, որպէս զի վերջինիս միջոցով կարողանայ բարձրանալ խաների գահը: Թէև ազդեցիկ Շիրին մրզաները (օսմանեան կուսակցութիւնը) հակառակ էին նրա ընտրութեանը և ապօրինի գահ բարձրանալուն, կասկածով վերաբերուելով նրա դէպի ռուսներն ունեցած հակումին, սակայն ռուսական սուինները իրանց դերը խաղացին թափառական նօղայ օրդաների հետ միասին, և Շահին-Գիրէյը 1776 թուին բարձրացաւ խաների գահը Բախչէսարայում:*

*Բայց Պոտեմկինը, որը այդ ժամանակի ռուսական քաղաքականութեան ղեկավարն էր, այդ էլ քիչ համարեց: Նրա ցանկութիւնն էր, օգտուելով օսմանցիների թուլութիւնից, որքան կարելի է շուտով գրաւել Ղրիմը:*

*Ուստի կազմեց մի ծրագիր, որի իրագործումով թաթար խաները իրանք նեղն ընկած՝ պիտի խնդրէին Հիւսիսային Արծուին՝ գրաւել Ղրիմը ու իրանց վարձատրել մի աւելի արդիւնաւէտ կալուածով:*

*Պոտեմկինը և Ռումեանցեվը Եկատերինա Բ. կայսրուհու*

հաճութեամբ 1778 թուի փետրուարի 25-ին կարգադրեցին Ղրիմից գաղթեցնել բոլոր քրիստոնեաներին դէպի ռուսական դաշտավայրը՝ Դոնի ափերը՝ և այդպիսով զրկել խանին իր օգտակար, արդիւնաւոր ժողովրդից։ Այդ ծրագրի իրագործումով Պոտեօմկինը ենթադրում էր հասնել երկու նպատակի. նախ, ինչպէս ասացինք, Ղրիմից հեռացնել աշխատաւոր և ժրաջան մի ժողովուրդ և զրկել խանին իր եկամուտների գլխաւոր աղբիւրից, երկրորդ՝ բնակեցնել ռուսական դաշտավայրը աշխատաւոր և կուլտուրական ազգերով։

Բայց այդ նպատակին հասնելու համար կային շատ արգելքներ։ Նախ՝ որ ժողովուրդը ինքը ոչ մի ցանկութիւն չունէր հեռանալու իր բնակած երկրից. երկրորդ՝ բուռն ընդդիմադրութեան պիտի հանդիպէին թաթարների կողմից, որոնք հասկանալով ծրագրի յետին նպատակը՝ պիտի աշխատէին ամեն կերպ արգելք հանդիսանալու։

Որպէս զի առանց դժուարութիւնների կարողանան իրագործել այդ միտքը, նրանք դիմեցին հետևեալ միջոցին։ Ռումեանցևի առաջարկութեամբ Ղրիմի ռուս զօրքերի հրամանատար գեներալ-պորուչիկ Պրօզօրօվսկին հրաւիրեց իր մօտ յոյների միտրօպօլիտ Իգնատիոսին, հայ-լուսաւորչականների առաջնորդ Պետրոս վարդապետ Մարկոսեանին և կաթոլիկների պատեր Յակոբ Վարդերեսօվիչին և, պարզելով նրանց առաջ ռուս կառավարութեան դիտաւորութիւնը, խնդրեց նրանց աջակցութիւնը։ Հոգևոր առաջնորդները, զգալով խնդրի լրջութիւնը և ծանրակշիռ լինելը, խնդրեցին ժամանակ՝ խորհրդակցելու ժողովրդի ականաւոր ու ազդեցիկ անձանց հետ։

Զատկական տօները մօտենում էին, ուստի քահանաներին հրահանգ տրուեց եկեղեցիներում քարոզելու գաղթականութեան մասին և յորդորելու ժողովրդին՝ հեռանալ Ղրիմից դէպի «Աւետեաց երկիրը»—Ռուսաստան։

Այս հրաւէրը՝ յայտարարուած եկեղեցիների բեմից՝ կայծակի արագութեամբ տարածուեց ամեն մի համայնքում, առաջ բերելով մեծ դժգոհութիւններ ու խռովութիւններ։ Թէև մի կողմից էլ ռուսաց էմիսարները ամեն կերպ խոստումներ էին անում քրիստոնեաներին ապագայ արտօնութիւնների մասին, սակայն աջողութիւնը շատ կասկածելի էր։ Մինչ այս՝ գեներալ Պրօզօրօվսկիի պաշտօնը յանձնուեց գեներալ Ալէքսանդր Վասիլևվիչ Սուվօրօվին։ Սրա գալով՝ գաղթականութեան խնդիրն էլ աւելի արագ ընթացք ստացաւ։ Սուվօրօվը աջ ու ձախ պատիւներ ու ընծաներ բաշխելով աշխատում էր շատ-

պեցնել գաղթականութիւնը։ Նա խոստացաւ ռուս տէրութեան կողմից Իգնատիոս միտրոպոլիտին 6,500 ր., Պետրոս վարդապետին՝ 2,820 ր., իսկ Յակոբ պատերին 1,250 ր.։

Թէ «ընծաները» և թէ ցմահ իրանց հօտի կառավարիչ մնալու ցանկութիւնը պակաս գրաւիչ չէին այդ պետերի համար, սակայն դժուար էր ժողովրդական ըմբոստացման առաջն առնել։ Ահա նրանք աշխատեցին ահաբեկել՝ տարածելով կոտորածի մասին լուրեր. միւս կողմից էլ ռուս կառավարութեան բերանացի տուած խոստումները թղթով ստանալու ջանքեր արին, որպէս զի կայսրուհու հրովարտակով հաստատած արտօնութիւններին ժողովուրդը կասկածով չվերաբերուի։

Եւ 1778 թուի յուլիսի 17-ին ժողովրդի փոքր մասի ներկայացուցիչները հոգևորականների հետ միասին ներկայացրին ռուս կառավարութեանը հետևեալ պայմանները. 1) «Բաւարար վարձատրութիւն Ղրիմում թողնելիք անշարժ կալուածների համար. 2) Արքունի ծախսով տեղափոխութիւն. 3) Կայսրուհու անունով խոստացուած հողը՝ Դնեպր, Սամարա և Օրեօլ գետերի աւազաններում. 4) Անխառն բնակութիւն միւս բոլոր ազգաբնակութիւններից առանձին և մի մի քաղաք իրանց գիւղերով իւրաքանչիւր ազգի համար առանձին. 5) Հոգևոր պետերին իրանց հօտերի վրայ լիազօրութիւն. 6) Տասնամեայ ազատութիւն բոլոր հարկերից և բոլոր մասնաւոր ու արքունի պարտականութիւնից. 7) Ազատութիւն զինուորագրութիւնից. 8) Ազատ կառավարութիւն իրանց օրէնքներով և իրանց միջից ընտրուած մարդկանց ձեռքով՝ տեղական նահանգապետի հսկողութեան ու պաշտպանութեան ներքոյ. 9) Սերմացու՝ առաջին տարուայ համար, մինչև նոր ցորենի հասնելը, և նիւթեր ու ատաղձ՝ շինութիւնների համար. 10) Վարձատրութիւն թողնելիք ցանքսերի և թաթարների վրայ մնալիք պարտքերի փոխարէն»*)։ Բացի այս գրութիւնից՝ Ղրիմից գնաց և մի պատգամաւորութիւն Պետերբուրգ՝ անձամբ խնդրելու կայսրուհուն, որ վերոյիշեալ պայմանները բաւարարուեն բարձրագոյն հրովարտակով։

Մինչ այս՝ ժողովրդի մեծամասնութիւնը, միացած՝ թաթար մրզաների հետ, խանին շարունակ տեղեկացնում էր խռովութիւնների մասին, խնդրելով այդ յուզմունքների առաջն առնել։ Նրանք բողոքում էին այն լուրերի դէմ, որ տարածում էին ռուսների գործակալները, թէ իբր թաթարները կոտորելու

---

*) Երուանդ Շահազիզ. «Նոր-Նախիջևան և Նոր-Նախիջևանցիք», երես 34.

են հայերին, թէ նրանց դրութիւնը աւելի պիտի վատանայ, երբ միան և այլն։

Մինչև անգամ հայ երևելիները հետևեալ աղերսագիրը ներկայացրին Շահին-Գիրէյ խանին. «Մենք երեք-հարիւր տարուց ի վեր ձեր ծառաներն ու հպատակներն ենք և գոհ կերպով բնակվում ենք ձեր պետութեան մէջ, երբէք անհանգստութիւն չենք կրել. այժմ մեզ ուզում են այստեղից հանել ու քշել։ Աստուծու, Մարգարէի և ձեր նախնիքների անունով պաղատում ենք, այդ բռնութիւնից ազատեցէք մեզ, ձեր ստրուկներին. մենք միշտ ձեր կեանքի համար աղօթող պիտի լինենք Աստուծուն»*)։

Պարզ էր, որ ժողովրդի մեծամասնութիւնը բոլորովին չէր կամենում գաղթել և իր հարիւրաւոր տարիների քրտնաթոր աշխատանքի պտուղը թողած՝ անպտուղ և անապատ վայրերի մշակութեամբ զբաղուել։

Տեսնելով այդ յուզմունքը՝ խանը վերջապէս ստիպուեց բողոքել ռուսների ինքնակամ գործողութիւնների դէմ։ Նա պատրաստեց մի մանրամասն զեկուցագիր, որին կցեց և իր ստացած պաշտօնական տեղեկութիւնները, և ներկայացրեց ռեզիդենտ Կոնստանդինովին ու Ա. Սուվորովին։ Այդ զեկուցագրում նա կասկած էր յայտնում, թէ այդ բոլոր հակաժողովրդական գործողութիւնները կատարվում են կայսրուհու հաճութեամբ, և խնդրում էր վերջ տալ այդ խռովութիւններին։

Միևնոյն ժամանակ, յուլիսի 18-ին 1778 թուի, հրովարտակ արձակեց, որով հանգստացնում էր հայերին և յոյներին, ասելով թէ սուտ են այն լուրերը, թէ իբր խանը ծախել է իր քրիստոնեայ հպատակներին ռուս կառավարութեանը, և պահանջում էր բռնել այդպէս ասողներին և իրան ներկայացնել։

Ռուս կառավարութիւնը, տեսնելով որ գործը աւելի մեծ արգելքների է հանդիպում, սկսեց պատճառաբանել, թէ խանի հպատակ քրիստոնեաներն իրանք են խնդրում գաղթեցնել և որ կառավարութիւնը միայն ընդառաջ է գնում նրանց ցանկութեան։

Միևնոյն ժամանակ Պոտեոմկինը ռեզիդենտ Կոնստանդինովի միջոցով յայտնեց, որ նորին վսեմութիւնը թող չցաւէ հեռացողների վրայ, որովհետև նրա կրելիք վնասները կայսրուհին ամենողորմածաբար պիտի վճարէ լիուլի կերպով պետական գանձարանից։

---

*) Լէօ. «Յովսէփ կաթողիկոս Արղութեան», երես 51.

Այդպիսով խանը ստացաւ 50,000 ր. վարձատրութիւն և սկսեց մատների արանքով նայել ռուսների գործողութիւններին, թէև սա երեսս խռովեց ու հեռացաւ Ղարասուբազար։ Բացի այդ՝ նրան շրջապատող պալատականներն ևս ստացան իրանց բաժինը, և անբաւական մնաց միայն, իրաւազուրկ ժողովուրդը, որին հէնց խանի արձակած յուլիսի 18-ի հրովարտակի օրը քշեցին Ղրիմից։

Գաղթականութիւնը սկսուեց 1778 թուի յուլիսի 18-ին Ղրիմից դէպի Ս. Դմիտրի բերդի շրջակայ հողերը, որ հաւանել էին Ղրիմից գնացած պատգամաւորները և որը ռուս կառավարութիւնը խոստացել էր տալ։

Հարուստները գնում էին սեփական կառքերով, իսկ չքաւորները ռուս տէրութեան յատուկ սայլերով։ Գաղթականները հեռացան Ղրիմից երեք մեծ խմբերով։ Առաջին խումբը ճանապարհ ընկաւ, ինչպէս արդէն ասացինք, յուլիսի 18-ին, երկրորդը՝ օգոստոսի 20-ին և երրորդը՝ սեպտեմբերի 28-ին։ Բոլոր գաղթողների թիւն էր 12,598 հոգի, որոնք անցնելով Պերեկօպը մտան ռուսաց սահմանը, որտեղ նրանց սպասում էին Ռոստովի նահանգապետ Չերտկովի յատուկ 6000 սայլերը, որոնցով գաղթականները տեղափոխուեցին Ալէքսանդրովսկ բերդաւանը։ Ամբողջ մի տարի ռուսական անապատ դաշտավայրում հազար ու մի նեղութիւններ քաշելով՝ նրանք վերջապէս հնարաւորութիւն ստացան տեղաւորուելու։ Հայ-լուսաւորչականները հիմնեցին Նոր-Նախիջևան քաղաքը ու բնակուեցին նրանում ու նրա շրջակայ նորահաստատ գիւղերում։

Ղրիմից հեռացած հայ-կաթօլիկները հաստատուեցին Եկատերինօսլաւում։ Սակայն չկարողանալով տանել թէ կլիման և թէ չարքաշութիւնը, նրանք, Ղրիմի՝ ռուսաց ձեռքը անցնելուց յետոյ, կրկին վերադարձան Ղարասուբազար։

Ինչ վերաբերում է յոյներին, նրանք բնակութիւն հաստատեցին Մարիուպօլ, Բերտեանսկ և Տագանրօգ քաղաքներում ու շրջակայ գիւղերում։

Հայ գաղթականներն Ղրիմի ո՛ր քաղաքներից ու գիւղերից ի՛նչ թւով են գաղթել, այդ երեւում է ստորև մեր բերած աղիւսակից, որ քաղել ենք Դուբրովինի «Присоединеніе Крыма» աշխատութեան երկրորդ հատորից*)։

*) Այդ ժամանակները հայերը կենտրոնացած էին գլխաւորապէս Թէոդոսիայում, Ղարասուբազարում, Հին-Ղրիմում, Կօզլօվում (Գէօզլէվ կամ Եւպատօրիա) և Օրակում կամ Պերեկօպում—ըստ հայոց՝ Օրբերան—Բախչէսարայում և Բալակլաւայում։ Հ. Ալոյիս-Մարիա-Պեդու հետաքրքրական

| | Քաղաքներից | այր | կին | ընդամենը |
|---|---|---|---|---|
| 1. | Կաֆայից | 2,781 | 2,730 | 5,511 |
| 2. | Բախչէսարայից | 702 | 673 | 1,375 |
| 3. | Ղարասուբազարից | 1,419 | 1,390 | 2,809 |
| 4. | Կէօզլեվից | 667 | 637 | 1,304 |
| 5. | Ակ-Մէչէթից | 145 | 114 | 259 |
| 6. | Հին-Ղրիմից | 87 | 73 | 160 |
| | | 5,801 | 5,617 | 11,418 |
| | Գիւղերից | | | |
| 1. | Թաթլը | 112 | 100 | 212 |
| 2. | Մելիք | 39 | 33 | 72 |
| 3. | Ղամըշլըղ | 62 | 59 | 121 |
| 4. | Սալա | 115 | 109 | 224 |
| 5. | Ջուրուք-սու | 20 | 20 | 40 |
| 6. | Բուռունտուկ-օտար | 17 | 21 | 38 |
| 7. | Թոփտի | 7 | 3 | 10 |
| 8. | Սուլթան-Սալա | 34 | 23 | 57 |
| 9. | Օրթալանկ | 214 | 192 | 406 |
| | | 620 | 560 | 1,180 |

ՊԵՏՐՈՍ ԹՈՒՄԱՆԵԱՆ

(Կը շարունակուի)

---

վիճակագրական տեղեկութիւններ է տալիս 1669 թուին հայոց եկեղեցիների մասին։

1. Կաֆա.—Կարեւոր ծովեզրեայ նաւահանգիստ, որ գտնվում է օսմանցոց ձեռքը։ Ունի հայոց 24 եկեղեցի 23 քահանաներով։ Լատինացոց եկեղեցին աւերակ է և չունի քահանայ։

2. Բալակլաւա.—Նոյնպէս ծովեզրեայ նաւահանգիստ, գտնվում է թաթարաց ձեռքը։ Ունի հայոց մի եկեղեցի և մի քահանայ։

3. Բախչէսարայ.—Թաթար խանի աթոռանիստ քաղաքը։ Ունի հայոց մի եկեղեցի և մի քահանայ։

4. Ղարասուբազար.—Ունի մի եկեղեցի և եօթն քահանայ։

5. Կօզլով.—Ունի մի եկեղեցի 3 քահանայով։

6. Օրակս կամ Պերեկօպ.—Ըստ հայոց՝ Որիբերան, ունի մի եկեղեցի և մի քահանայ։

7. Հին-Ղրիմ.—Ունի երեք եկեղեցի և մի վանք։

Այդ հաշուի մէջ չեն մտել, ինչպէս երեւում է, Հին-Ղրիմի և Ղարասուբազարի մէջ գտնուած հայ գիւղերի եկեղեցիները։ Եւ մեզ թւում է, առհասարակ, որ վերոյիշեալ վիճակագրութիւնը բաւական թերի է։

Այս բոլոր քաղաքների և գիւղերի հայ ժողովուրդը գտնուել է մի եպիսկոպոսի իշխանութեան տակ։ Հ. Պեդուի ժամանակակից է եղել Մարտիրոս եպիսկոպոսը, Յակոբոս կաթողիկոսից ձեռնադրուած, դեռ երիտասարդ՝ 35 տարեկան հասակում։

# ՄԻ ՊՏՈՅՏ ՋԱՒԱՅՈՒՄ

Յօդուածովս նպատակ չունեմ Ջաւա կղզու նկարագրութիւնը տալ, վասն զի ամեն քիչ շատ հասկացող մարդ գիտէ, թէ Ջաւան մի բարեբեր և հարուստ կղզի է, թէ նա հօլանդացոց իրաւասութեան ներքոյ է և այլն։

Ես հաճոյքը ունեցայ մօտիկից ծանօթանալ այդ հետաքրքրական կղզու հետ։ Իմ պտոյտս, որ երկու ամիս տևեց, տարաւ ինձ կղզու բոլոր նշանաւոր տեղերը։ Սկսելով արևելքից, անցայ բրնձի և շաքարեղէգնի անծայր և անսահման դաշտերի ու արտերի միջով. ընդմիջեցի շատ գետեր և սրճենիներով ծածկուած կանաչազարդ լեռներ ու ձորեր կտրելով հասայ վերջապէս Պրիանգար։ Դա՝ կղզու արևմտեան մասն է, պարզապէս բնութեան սքանչելիքներով պարուրուած։ Շոգեկառքը տնքալով ու սուլելով բարձրանում է ու ցածրանում, ոլոր-մոլոր ուղիներով անհաւոր պտոյտներ է գործում։ Շոգեկառքի պատուհանին կրթնած՝ ապշած դուրս եմ նայում. նայում ու զմայլում այդ ժըպտուն, այդ դիւթիչ բնութեանը. սիրտս թունդ է գալիս, հոգիս հրճւում է, և այդ պատկառելի բարձունքներից միտքդ ևս առաւել է բարձրանում, սաւառնում դէպի վեր, դէպի անծայր ու կապոյտ եթերը... Օ՜, հիանալի է Պրիանգարը, արբեցնելու չափ հմայիչ։ Ոչ պակաս հիանալի են նաև իրանց եզակի գեղեցկութեամբ նշանաւոր՝ Սմիրօ (12,000 ոտ բարձրութեամբ), Բրօմօ (8,500 ոտ) և Կաւա (7,500 ոտ) հրաբխային լեռները, որոնց միայն տեսնելու համար տարեկան բազմաթիւ եւրօպացի և ամերիկացի ճանապարհորդներ են գալիս Ջաւա։ Ես բաղդ ունեցայ երեքն էլ այցելելու, կամ աւելի ճիշտ՝ վերջին երկուսը, որովհետև նրանց երկուսի էլ խառնարանները տեսայ, սակայն Սմիրօյինը՝ ոչ. նրա վերելքը շատ դժուար է և վտանգաւոր, ուստի բաւականացայ միայն հեռուից տեսնելով պարզ նշմարուող գագաթը և սև ծուխը, որ քուլա-քուլա բարձրանում էր։ Առա-

ջին երկուսը միմեանց մօտ, կողք կողքի են և անդադար գործում են։

Ինչպէս ասացի, Սմիրօյի միայն սև մուխն է տեսանելի, սակայն Բրոմօյի խառնարանում պարզ կարելի է տեսնել մշտաբորբոք կրակը, որ բնիկների համար նուիրական է, վասն զի նրանք հաւատում են, որ իրանց մեծ բրահմանը այստեղ է բնակվում (շատերի կարծիքով «Բրոմօ» անունը «Բրահմանի» աղաւաղուած ձևն է)։

Կաւան համարեա թէ դադարել է գործելուց։ Նրա ամբողջ խառնարանը, որ եռանկիւնաձև է և ահագին տարածութիւն ունի, ծծմբային ջրի մի լիճ է կազմում։ Բայց նրա մի անկիւնում ընկած են մի քանի կոնաձև փոքրիկ ժայռեր, որոնք ծուխ և գոլորշի են արտաշնչում. կարծէք այդ անկիւնը հին պատգամատու քրմուհիների մի Chasm լինի։

Այս երեք հրաբուխներն էլ Ջաւայի արևելահարաւումն են։

Կան նաև շատ ուրիշ հետաքրքրական վայրեր, օրինակ՝ հռչակաւոր «Բուրու Բուդուր»-ը, որ հնդիկների ամենահին կռատունն է Ջաւայում, Տօսարին (սանատորիա), Գարուտը, Buintenrong-ի բուսաբանական պարտէզը, որոնց եթէ մի առ մի նկարագրել ուզեմ, նպատակիցս շեղուած պիտի լինեմ, որովհետև սկզբում ասացի, թէ նպատակս չէ Ջաւան նկարագրել. այլ կուզեմ միայն մի փոքրիկ ակնարկ ձգել Ջաւայի հայ գաղութի վրայ, որին անձամբ տեսնելու հաճոյքը ունեցայ։

Ջաւայի գրեթէ բոլոր մեծ քաղաքներում ցիր ու ցան հայեր կան, Նոր-Ջուղայից գաղթածներ. սակայն հայաշատ կենտրոնները Բատաւիա և Սուրբայա քաղաքներն են, հէնց որոնց մասին էլ պիտի խօսեմ։

Բատաւիայի հայ գաղութը (Նոր-Ջուղայից) ունեցել է փառաւոր անցեալ։ Նա տուել է մեզ մեծահամբաւ նշանաւոր ազգասէրներ։ Մանաւորապէս Նոր-Ջուղային մեծ օգուտներ է հասցրել այդ գաղութը թէ նիւթապէս և թէ բարոյապէս։ Բատաւիայից էր բարեյիշատակ Մանուկ Յորդանանեանը, որը հիմնադիր հանդիսացաւ Նոր-Ջուղայի Ս. Կատարինեան օրիորդաց դպրոցի, որպէս նաև Ս. Ամենափրկչեան վանքի տպարանի, այսինքն երկու կարևոր հաստատութիւնների, որոնք Նոր-Ջուղայի լուսաւորութեան գործում մեծ դեր են խաղացել։ Բատաւիայի թեմին էր պատկանում նաև յայտնի միլիոնատէր Գէորգ Մանուկը, որը ժամանակով հոլանդական փոխարքայի բարեկամութիւնն էր վայելում և մի քանի առիթներում մեծաքանակ գումարներ է պարտք տուել հոլանդական կառա-

վարութեանը։ Սա մեռնելու ժամանակ մեծ գումարներ է թողել Ջուղայի, Էջմիածնի և Երուսաղէմի վանքերին։ Եթէ չեմ սխալվում, Բատաւիայի հայ հարուստներից մինն է եղել, որ ռուսաց Եկատերինա կայսրուհու հետ բանակցութեան մէջ է մտել Ղարադաղի և Ղարաբաղի նահանգները գնելու և հայոց բնակութեան յատկացնելու համար, որը դժբախտաբար չէ աջողուել։

Ասկայն ցաւալի է ասել, որ Բատաւիայի հայ գաղութը հետզհետէ կորցրել է իր նախկին վսեմ դիրքը, և այսօր նա մի ոչ շատ նախանձելի պատկեր է ներկայացնում։ Հազիւ մի տասնեակ ընտանիքից բաղկացած այդ գաղութը (նիւթապէս բաւական բարեյաջող վիճակում են) այժմ շատ քիչ է հետաքրքրվում հայկական կեանքով։ Կարծէք նա տրամադիր է քիչ քիչ խորթանալու հայութիւնից, մանաւանդ նոր սերունդը։

Ի՞նչ է պատճառը այս անմխիթար վիճակի։

Անշուշտ անուրանալի է, որ իրանք, Բատաւիայի հայերը որոշ չափով պատասխանատու են, սակայն չեմ վարանի ասել, որ ամենամեծ պատասխանատուութիւնը ծանրանում է Նոր-Ջուղայի հոգևոր իշխանութեան վրայ։ Թէ ինչո՞ւ, ահա ձեզ բացատրութիւնը։

Բատաւիան ունի մի հայ եկեղեցի ս. Յովհաննէս անուն, որը իր հիմնարկութիւնից ի վեր ամենամեծ ոյժն է եղել Բատաւիայի հայոց որպէս համայնք մնալուն։ Ջաւայում միակ ազգային հաստատութիւնը լինելով՝ այդ եկեղեցին, իր շնորհքով քահանաների միջոցով, միութեան կապ է եղել Բատաւիայի հայ գաղութի անդամների, եթէ չասեմ բոլոր Ջաւահայոց մէջ. բայց ի՞նչ վիճակի մէջ է այդ եկեղեցին այժմ։ Ահա այն տխուր տպաւորութիւնը, որ ունեցայ ես Բատաւիա եղած ժամանակս։

Երկու տարի էր՝ հայ եկեղեցու երես չէի տեսել, ուստի այն առաւօտ, երբ մտնելու էի Բատաւիա, ուրախ մտածումների մէջ էի, որ շուտով Բատաւիայի եկեղեցին պիտի տեսնէի։ Շոգեկառքը կանգ առաւ գեղեցիկ կայարանում։ Նոյն օրը իրիկնապահին մի կառք վարձեցի և պատուիրեցի, որ ինձ հայոց եկեղեցին տանէ։ Կառապանը ձիերին մտրակեց, կառքն առաջ սլացաւ։ Գնա՜ ու գնա։ Վերջապէս կառքը կանգ է առնում մի պատկառելի շինութեան առաջ։ Արդեօք սա՞ է հայոց եկեղեցին,—հարցնում եմ ինքս ինձ. բայց չէ, չէ կարելի. սա աւելի կաթոլիկների վանքի է նման։ Կառապանին ասում եմ, թէ սա չպէտք է լինի հայոց եկեղեցին։ Նա վարանման մէջ է ընկնում և ասում, թէ էլ ուրիշ եկեղեցի չգիտէ ինքը։ Ստիպուած՝ մտնում եմ վանքը։ Անմիջապէս մի քանի վարդապետներ շրջապատում են

արծարծել նրա մէջ ազգասիրութեան և կրօնի եռանդ։ Դժբախտաբար Նոր-Ջուղան, որ այդ թեմերին քահանաներ է մատակարարում, ինքն աղքատ է ժամանակակից ոգով կրթեալ և զարգացեալ քահանաներից։ Յիրաւի, որպէս տեղեկացանք, Նոր-Ջուղայում կան ուսեալ երիտասարդներ, որոնք յարմար պիտի լինէին քահանայութեան, սակայն նրանք չեն կամենում ձեռնադրուել, վասնզի Նոր-Ջուղայի քահանաների այժմեան կեանքը շատ հեռու է նախանձելի լինելուց։ Նախ որ՝ նրանք նիւթապէս խիստ անապահով վիճակի մէջ են։ Նրանք որոշեալ ռոճիկ չունեն և ժողովրդից ստացած տուրքերը շատ գծուծ են, այնպէս որ եթէ Հնդկաստանի և Ջաւայի թեմագնացութիւնը չլինէր, քահանայք ահագին պարտքերի մէջ պիտի ընկնէին՝ իրանց ընտանիքները պահելու համար։

Թեմերում թէև ռոճիկ են նշանակուած քահանաների համար և ժողովրդի նուէրներն առատ են համեմատաբար, սակայն եթէ ի նկատի առնենք այն բոլոր զրկանքները, որոնց ենթարկվում են նրանք բարոյապէս և ֆիզիքապէս, կը տեսնենք, որ թեմերում ժողովուած այդ մի քանի ռուփիները շատ թանգ են նստում մեր քահանաների վրայ։ Թեմագնացութիւնը ինքն ըստ ինքեան բաւական ծախս է նշանակում։ Քահանայք, որոնք շատ անգամ պարտքով են ճանապարհ ընկնում Ջուղայից, պարտաւոր են նախ թեմը կառավարելու համար Ջուղայի վանքին մի որոշ տուրք վճարել (?), յետոյ մերձ $1^{1}/_{2}$ ամսուան ճամբորդութեան պատրաստութիւն տեսնել նախօրէն և ապա իրանց ընտանիքը բախտին յանձնելով սար ու ձոր ընկնել, շարունակ քառասուն-յիսուն օր ջորիների վրայ օրօրուելով, անվերջ չարչարանքներով ու նեղութեամբ Պարսկաստանի դըժուարանց լեռների ու անապատների միջով ճանապարհ կտրել, գողերի և աւազակների յարձակումների ենթարկուել շատ անգամ։

Վերջապէս հազար ու մի նեղութիւններով և ահ ու դողով նրանք Բուշիր են հասնում։ Բայց եթէ ճամբորդութիւնը ձմրան է ընկնում, էլ Աստուած թող ողորմի...։ Բուշիր հասնելով դժուարութիւնը դեռ չվերջացաւ, վասն զի ծովագնացութեան անսովոր լինելով՝ շատերն են հիւանդանում Պարսից ծոցում։ Ինչևէ՝ մի կերպ հասնում են օրհնեալ Հնդկաստան։ Բայց այնտեղ էլ նոր ցաւեր են սպասում նրանց։ Հնդկաստանի տաք և յեղձուցիչ կլիմային և տեղական կարգ ու կանոնին անսովոր և անծանօթ լինելու դժուարութիւնը մի կողմից, թեմական պատասխանատուութեան և իր ընտանեկան հոգսերը և մտահոգու-

կայ, ոչ էլ շինելու ձգտումն, վասնզի աւելորդ մի բան է համարվում դա։ Չկայ նաև ազգային մի այլ հաստատութիւն՝ բացի «Հայկեան Foot-ball club»-ը, որը վերջերումս է կազմուել մի խումբ երիտասարդների ջանքով։ Այդ ակումբի նպատակն է sports-ի ոգին տարածել Սուրբայայի հայերի մէջ։ Յուսանք, որ կը յարատևէ այս ընկերութիւնը, որը թերևս կարողանայ Սուրբայայի հայ համայնքի անդամների միջև կապ հաստատել և մի հայկական ընկերակցական շրջան կազմել, որը դժբախտաբար այժմ բացակայում է։ Օտար հոսանքն այստեղ էլ շատ ուժեղ է, և զօրեղ կամք է հարկաւոր նրան դիմադրելու։

Ջուղայեցի Մ. Յ.

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ

---

## ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

*Մեր վերջին տեսութիւնը կաթողիկոսական հարցի մասին (հոկտեմբեր-նոյեմբերի համարում № 10—11), իբրև եզրակացութիւն, մենք աւարտեցինք հետևեալ խօսքերով.*

*«Իբրև եզրակացութիւն մեր այս տեսութեան՝ կաթողիկոսական հարցի մասին, որ մի քանի օրից յետոյ լուծուած կը լինի, պէտք է ասենք, որ, ըստ ամենայն հաւանականութեան, Օրմանեան սրբազան՝ այդպիսի աննպաստ և աննաւասար պայմանների մէջ դժուար թէ ընտրուի կաթողիկոս ամենայն հայոց, այլ կընտրուի, երևի, նրանից աւելի նուազ արժանիքներով օժտուած կամ բոլորովին անարժան մի անձն։ Եւ դրա հետևանքն այն կը լինի, որ 1) Էջմիածինը կը մնայ իր նախկին անկեալ դրութեան մէջ, քարշ կը տայ իր եղկելի գոյութիւնը և անկարող կը լինի ստեղծագործական գործունէութիւն ցոյց տալ. 2) Ռուսահայ ժողովրդի մեծամասնութեան սիրտը աւելի շատ կը հովանայ Էջմիածնից, և երկար ժամանակ կը թուլանան այն բարոյական հզօր կապերը, որոնցով Էջմիածինը կապուած է եղել հայ ժողովրդի հետ. 3) Կը սառչեն զգալի կերպով եղբայրական համերաշխութեան զօդերը Թիւրքահայերի հետ, որոնք, անգիտակցօրէն գործիք դառնալով Դաշնակցութեան ձեռքում, իրանք իսկ ճնշուած լինելով նրա բռնապետութեան ներքոյ և ունենալով այդ բռնապետութեան լուծը թօթափելու զօրեղ ըմբոստացումներ, անկարող եղան, շնորհիւ ազգային ժողովի Կենտրոնի խմբակցութեան ապիկար գործելակերպի, յետ մղել դաշնակցական-*

ների ոտնձգութիւնները և չընկնել նրանց լարած թակարդի մէջ»։

Մարգարէ չպէտք էր լինել գուշակելու համար այս հետեւանքը։

Եւ մեր գուշակութիւնը կատարուեց։

Օրմանեան արքեպիսկոպոսը, հայ ազգի մեծամասնութեան և ողջամտութեան կողմից արժանաւորագոյն նկատուածը, չընտրուեց։ Չընտրուեց և նա, ով նրանից յետոյ՝ աւելի արժանաւոր էր նկատվում—Դուրեան Եղիշէ արքեպիսկոպոսը—այլ ընտրուեց նա, իբրև առաջին կանդիդատ, որին չկամեցաւ տեսնել Լուսաւորչի գահի վրայ Ռուսաստանի 6 թեմերից ամբողջ հինգը և նոյն իսկ 6-րդ թեմի մի ստուար մասը՝ Ալէքսանդրօպօլի յաջորդութիւնը. որին չկամեցաւ նոյն իսկ Թիւրքիայի հայութեան մի մասը. նա, որ ընտրելին էր մի բուռն «հօրիզօնական» կոչուած թայֆայականների և հայ հոգևորականութեան մի մասի։ Եւ թէև այդ կանդիդատը—Գէորգ արքեպիսկոպոս Սուրէնեան—չստացաւ հայ ժողովրդի 124 ներկայացուցիչների ձայների կէսն անգամ, այլ միայն 58 ձայն, այնուամենայնիւ նա դարձաւ կաթողիկոսական առաջին կանդիդատ։

Հայ ժողովուրդը և նրա լուսաւոր, ողջամիտ ու ուղղամիտ մասը, որ փայփայում էր իրան այն յոյսով, թէ, վերջապէս, XX դարում հայոց եկեղեցուն կը վիճակուի ունենալ հովուապետ՝ մի կրթեալ և գիտնական անձն, յուսախաբուեց, չքացած տեսաւ իր իղձը։ Եւ անմաքուր պայքարը, որ մի խումբ հոգևորականներ և մի խումբ փառամոլ ու շահասէր մարդիկ, միացած «հօրիզօնական» կոչուած դիմակաւորեալ և քամէլէօնական-աղէֆային հոսանքին, մղեցին, արտադրեց այն հետևանքը, որ հայոց եկեղեցու պետ պէտք է դառնայ ոչ թէ Օրմանեան սրբազանի պէս մի կրթեալ և գիտնական անձն, ոչ թէ Դուրեան սրբազանի, Կարապետ և Մեսրոպ եպիսկոպոսների պէս նոյնպէս կրթեալ և գիտնական անձինք—թէև ոչ հաւասար Օրմանեանին, բայց և այնպէս գիտնական և կրթական մեծ ցենզ ունեցողներ—այլ մի անձն, որ այդ կողմից որևէ համեմատութեան մտնել չէ կարող վերոյիշեալների հետ։

Եթէ այսօր հայոց եկեղեցին զրկվում է կրթեալ և գիտնական պետ ունենալու պատուից, մինչ նա ունէր իր մէջ այդպիսի անձինք. եթէ էջմիածինը այսուհետև ևս դառնալու է թատր այնպիսի գործողութիւնների, որոնք կատարվում էին

Խրիմեանի օրով. եթէ եկեղեցու և կաթողիկոսական գահի արդէն վայր ընկած նշանակութիւնը աւելի ևս վայր է ընկնելու, որովհետև՝ ինչ և լինի Սուրէնեան արքեպիսկոպոսի բռնելիք ուղղութիւնը, գործելակերպը, բայց ջերմութիւն, համակրութիւն չէ կարող լինել նրա և հօտի այն մեծամասնութեան միջև, որ նրան քուէ չէ տուել և չէ ընտրել. եթէ այսուհետև ռուսահայերը երես դարձնեն Թիւրքահայերից, և եղբայրական կապերը հայութեան երկու գլխաւոր հատուածների միջև աւելի և աւելի թուլանան—այդ ամենի, կասենք նոյն իսկ՝ իրանց ապագայ հետևանքով կարի աղէտալի—բարոյական այդ ոճրագործութեան ամբողջ և միակ պատասխանատուութիւնը ծանրանում է պատմութեան և ապագայ սերունդների առաջ՝ 1) Մանկունի արքեպիսկոպոսի վրայ, որ եղել է միշտ չար աստղ հայոց եկեղեցու համար. 2) Կ. Պօլսի ազգային ժողովի վրայ, որ իր մեծամասնութեան անտարբերութեամբ, անշրջահայեաց և թեթևամիտ վերաբերմունքով՝ թոյլ տուեց դաշնակցականներին 24 ձայնով անցկացնել իրանց բանաձևը. 3) Ռուսահայ մի քանի հոգևորական և աշխարհական (Խորէն եպիսկոպոս, Մատթէոս վարդապետ, Սամսոն Յարութիւնեան և այլք) անձանց վրայ. 4) Թիւրքահայ մի քանի եկեղեցական և աշխարհական (Յակոբ Աշոտ, Թորգոմ եպիսկոպոսներ, Եր. Տէր-Անդրէասեան, Միհրդատ Հայկազն, Յ. Միքայէլեան և այլք) պատգամաւորների վրայ։

Եւ տայ Աստուած, որ հայոց եկեղեցին չտուժէ պատմական այն մեծ սխալով, որ գործուեց էջմիածնում փրկչական 1911 թուականի դեկտ. 11—13-ին, շնորհիւ անմաքուր և դաւաճանական գործելակերպի յիշեալ անձանց։ Եւ տայ Աստուած, որ հայոց եկեղեցին ստիպուած չլինի ապագայում անէծք և անաթէմա կարդալ բոլոր այդ անձանց գլխին, որոնք է որ իրանց տհասութեամբ, է որ կուսակցական ստոր միտումներով և շահերով, է որ փառամոլութեամբ, է որ վախի և ահաբեկման ներքոյ՝ դաւաճանեցին իրանց խղճմտանքին, համոզմանը և հանդիսաւորապէս ընդունած երդմանը։ Այդ դաւաճանութեան մի թեթև արտայայտութիւն պէտք է համարել այն տօմսը, որ տաճարում մնացած պատգամաւորներից մինը ձգել էր Դուրեան արքեպիսկոպոսի տուփի մէջ խղճի խայթից, որ յաւիտեան պէտք է ծակէ անմաքուր պայքարողների սիրտը։

Այո, դեկտ 11—13-ը մի լաւ քննութիւն էր, թէ որքան դեռ տհաս է մեր մէջ առողջ բանականութիւնը և ազգային ա-

ողջ քաղաքականութիւնը, առողջ ազգասիրութիւնը։

Եւ ահա, 1911 թ. դեկտ. 11—13-ին Էջմիածնում գումարուած հայոց ժողովրդի 124 ներկայացուցիչներից 92-ը յայտարարեցին և ընտրեցին կաթողիկոսական առաջին կանդիդատ, 58 ձայնով, Գէորգ արքեպիսկոպոս Սուրէնեանին, իսկ երկրորդ կանդիդատ, 57 ձայնով, Եղիշէ արքեպիսկոպոս Դուրեանին։

Կրկնում ենք, տայ Աստուած, որ հայոց եկեղեցին չտուժէ, և ժողովրդի բոլոր յոռետեսական խոհերը չիրականանան։

ՇԱՒԱՐՇ

# ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԸ

## ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԱՌԱՋԻՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ

(Նամակ Իտալիայից)

Հռոմ, 20 նոյեմբերի

Ձեզ յայտնի պէտք է լինի, որ այս տարի սեպտեմբերի 25-ին նշանակուած էր այստեղ Խաղաղութեան Համաշխարհային XIX կոնգրէսը, բայց պատերազմի պատճառով յետաձգուեց։

Կոնգրէսի կազմակերպիչ յանձնաժողովի նախագահ, յայտնի խաղաղասէր և գիտնական-արևելագէտ, սենատոր և Հռոմի համալսարանի պրոֆէսոր կոմս Անջելլօ Դը Գուբերնատիսը կոնգրէսի առիթով կազմակերպել էր համալսարանի ընդարձակ սրահների մէջ Խաղաղութեան պատմական ցուցահանդէսը (Exposition historique de le Paix), բաղկացած 15 ճիւղերից, այն է՝ Խաղաղութիւնը միթերի մէջ, Բիբլիական և Քրիստոնէական Խաղաղութիւնը, Արևելքը և Խաղաղութիւնը, Յունաստանը և Խաղաղութիւնը, Հռոմը և Խաղաղութիւնը, Իտալիան և Խաղաղութիւնը, Եւրոպան և Խաղաղութիւնը, Ամերիկան և Խաղաղութիւնը, Խաղաղութեան գլխաւոր դաշնագրերը, իրաւարարութեան (արբիտրաժի) գլխաւոր դաշնագրերը, Հաագայի կոնֆերենցիան, ժամանակակից նշանաւոր խաղաղասէրների և Խաղաղութեան համար տքնողների լուսանկարները և ինքնաձեռագիր գրութիւնները, Խաղաղութեան կոնգրէսները, ընկերութիւնները և դպրոցները, Կարմիր Խաչի և բոլոր այն հաստատութիւնների պատմութիւնը, որոնք աշխատում են պատերազմի աղէտները դարմանել, հին աշխարհի բանաստեղծների, փիլիսոփաների, հռետորների, օրէնսդիրների, պետական ռազմիկ մարդկանց, եկեղեցականների ասացուածները, ճառերը Խաղաղութեան մասին։

Խաղաղութեան այս մեծ ցուցահանդէսն առաջինն էր իր տեսակի մէջ, որովհետև նա ցոյց էր տալիս խաղաղասիրական շարժման զարգացումը կամ էվօլիւցիան դարերի ընթացքում և զանազան ազգերի մէջ։

Պրօֆէսօր Անջէլլօ Դը Գուբերնատիսը բարի եղաւ անձամբ առաջնորդելու ինձ համալսարանի այն երեք մեծ սրահները, ուր կազմակերպուած էր Խաղաղութեան մեծ ցուցահանդէսը։ Իմանալով որ ես հայ եմ, նա ինձ ասաց. «Այստեղ կայ և ձեր Հայաստանի բաժինը, Արևելքին յատկացուած մասի մէջ»։ Եւ ես տեսայ նախ մի իտալացի նկարչի պատկերը. դա մի նկար էր Հայաստանում տեղի ունեցած ջարդերի, և անհելի, ժանտ Մահի ետևից ծագում էր նոր կեանքի արշալոյսը։

—Ահա և հայկական բաժինը,—ասաց պրօֆէսօրը։

Եւ ես տեսայ մի գեղեցիկ շրջանակի մէջ Հ. Առաքելեանի լուսանկարը և նրա ինքնաձեռագիրը՝ ֆրանսերէն այս բովանդակութեամբ։

«Իմ ազգը, հայոց ազգը, ունեցել է միշտ խաղաղասէր ոգի։ Եւ նա այդ խաղաղասէր ոգուն է պարտական իր երեքհազարամեայ պատմական գոյութիւնը։ Ուստի և ես, և իբրև մարդ, և իբրև հայրենասէր, պէտք է լինեմ ամենից առաջ խաղաղասէր (պասիֆիստ), որովհետև Խաղաղութեան սիրոյ մէջ է իմ ազգը կարողացել պահպանել իր մարդկային գոյութիւնը և իր ազգային անկախութիւնը։ Խաղաղութիւնը—դա է միակ միջոցը առաջադիմութեան և քաղաքակրթութեան, մանաւանդ փոքր ազգերի համար»։

—Ճանաչում էք, պ. Հ. Առաքելեանին, անշուշտ,—ասաց Դը Գուբերնատիսը։

—Այո, այո,—պատասխանեցի։

—Սեպտեմբերին այստեղ էր, հիւր էր ինձ,—ասաց պրօֆէսօրը.—եթէ Թիֆլիսով գնալու լինէք Պարսկաստան, իմ սիրալիր ողջոյնս յիշեցէք։ Այժմ ձեզ ցոյց տամ մի երկրորդ հայ խաղաղասէր, բայց դժբախտաբար նրա լուսանկարը չկարողացայ ձեռք բերել։

Մի այլ շրջանակի մէջ արտատպուած էր Օրմանեան սրբազանի «Հայոց եկեղեցին» նշանաւոր գրքից մի հատուած, որ վերաբերում է Խաղաղութեան։

—Որքան ես գիտեմ,—ասաց պրօֆէսօրը,—հայոց եկեղեցական գրքերի և շարականների մէջ Խաղաղութեան գաղափարը մեծ տեղ ունի գրաւած։ Ցանկալի էր ունենալ այդ կտորները։

Ես խոստացայ խօսել այդ մասին Վենետիկի Մխիթա-

րեան վարդապետների հետ, որոնք ձեռնհաս են հանել շարականներից Խաղաղութեան համար երգուած և յօրինուած կտորները և տալ նրանց ֆրանսերէն թարգմանութիւնը։

Ինձ վրայ, իբրև հայի, հաճելի տպաւորութիւն գործեց, որ միջազգային մի մեծ ցուցահանդէսի մէջ հայ ազգն ևս ունի իր ներկայացուցիչներն ի դէմս այնպիսի յարգելի անձնաւորութիւնների, ինչպէս Օրմանեան արքեպիսկոպոս և պ. Հ. Առաքելեան։

Տ. խ. Գ.

---

## ՆՕԲԷԼԻ ՄՐՑԱՆԱԿԸ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

Դեկտեմբերի 10-ին (ն. տ.) Խրիստիանիա քաղաքում տեղի ունեցաւ Խաղաղութեան համար Նօբէլի սահմանած մրցանակաբաշխութիւնը՝ նորվէգիական մինիստրների, ստօրտինգի անդամների և Նորվէգիայի ամենաականաւոր գրական և գիտնական անձնաւորութիւնների ներկայութեամբ։

Մրցանակաբաշխութեան հանդէսի տեղն էր Նօբէլի ինստիտուտի դահլիճը։

Հանդէսը բացուեց պրօֆէսոր Շտանգի մի զեկուցագրով սկանդինաւեան պետութիւնների կատարած միացեալ ջանքերի մասին՝ ստեղծելու համար մի ընդհանուր քաղաքացիական և զինուորական օրէնսդրութիւն։

Ապա պ. Լէօվլանդ, որ մրցանակները բաշխող յանձնաժողովի նախագահն է, յայտարարեց, թէ Նօբէլի Խաղաղութեան մրցանակը—200,000 ֆրանկ—այս 1911 թ. համար տրվում է երկու խաղաղասէր գործիչների՝ պ. պ. Ս. Ասսէրին (C. Asser), Հաագայից, և Ալֆրէդ Ֆրիդին (Alfred Fried), Վիէննայից։

Դոկտոր Ս. Ասսէրը նախկին մինիստր է և պետական խորհրդական, պատուիրակ Հօլլանդիայի՝ Հաագայի առաջին կօնֆերենցիայում (1899) և յայտնի է մանաւանդ իբրև իրաւագէտ խորհրդական։ Նա շատ հմուտ է միջազգային իրաւունքի մէջ և մինն է այն անձերից (պրօֆէսոր Ռօլէն Ժակմէն, Բլիւնչլի, Էմիլ դը Լավէլէյ), որոնք 1873 թ. հիմնեցին միջազգային իրաւունքի ինստիտուտը։

Ալֆրէդ Ֆրիդը մի պայքարող խաղաղասէր է, այսինքն Խաղաղութեան համար կռիւ մղող զինուոր։ Նա ծնուել է Վիէննայում 1864 թ., 16 տարեկան հասակից յարել է յօգուտ Խաղաղութեան շարժման և 1881 թուից ի վեր անդադար թէ Բեռլինում, թէ Վիէննայում, այսինքն աւատական և պատերազմասէր Եւրոպայի սրտում, կռուել է միջազգային համերաշխութեան համար։ Հիմնադիր և վերատեսուչ, տիկին Սուտների հետ միասին, «Frie denswarte» թերթի, որ գերմանական պասիֆիզմի (խաղաղասիրական շարժման) եռանդուն հանդէսն է, Ալֆրէդ Ֆրիդը մասնակցել է Խաղաղութեան բոլոր միջազգային կոնգրէսներին և աչքի է ընկել ամենաշահեկան խաղաղասիրական նախաձեռնութիւններով։ Նա հրատարակել է բազմաթիւ բրօշիւրներ և գրքեր, պաշտպանելով Խաղաղութեան դատը և մասնաւորապէս պասիֆիզմի մի ձեռնարկ, ինչպէս և մի գնահատելի տարեկան տեղեկագիր միջազգային կեանքի, աշխատակցութեամբ պ. Լաֆոնտէնի։

«Արօրի», իբրև խաղաղասիրական մի հանդէսի, խմբագրութիւնը իր անկեղծ շնորհաւորութիւններն է մատուցանում դոկտոր Ս. Ասսէրին և Ալֆրէդ Ֆրիդին, մաղթելով նորանոր նուաճումներ խաղաղասիրութեան ասպարէզում։

---

## ՇՎԷՅՑԱՐԱԿԱՆ ԽԱՂԱՂԱՍԷՐՆԵՐԻ ՈՐՈՇՈՒՄԸ

Խաղաղութեան բարեկամները և պասիֆիստները Շուէյցարիայում, մի ժողով գումարելով Լօզանում, 1911 թ. նոյեմբերի 5-ին, կայացրին հետևեալ որոշումը.

«Ի նկատի ունենալով, որ ամեն մի ժողովուրդ պարտականութիւն ունի պաշտպանել իր անկախութիւնը, իր հաստատութիւնները, իր երկրի ամբողջութիւնը.

«Ի նկատի ունենալով, միւս կողմից, որ պատերազմը մի յանցանք է, որովհետև նա իր հետ բերում է հազարաւոր մարդկային էակների մահը, որ նա անհեթեթութիւն է, որովհետև նա չէ լուծում ոչ մի խնդիր, որ նա պետութիւնների

կործանման պատճառ է, որ նա ուրացումն է եղբայրական համերաշխութեան կապերի, որոնք պէտք է կանօնաւորապէս գոյութիւն ունենան մարդկային ընտանիքի բոլոր անդամների մէջ.

«Յետ ենք մղում ամեն մի փորձ, որի նպատակն է յետ կասեցնել քաղաքացիներին իրանց զինուորական պարտականութիւնների կատարումից։

«Եւ բողոքում ենք վէճերը զէնքով լուծելու ամեն մի փորձի դէմ, երդուեցնելով կառավարութիւնները ենթարկել իրանց վէճերը Հաագայի միջնորդ դատարանին»։

---

# «ԱՐՕՐԸ» ԵՐՐՈՐԴ ՇՐՋԱՆԻ ՇԵՄՔԻՆ

---

Երկու տարի առաջ, 1910 թ. յունվարի 1-ին, մենք ձեռնարկեցինք «Արօր» ամսագրի հրատարակութեան:

Մեր նպատակն էր ստեղծել մի ընդհանուր գրական, գիտական-ժողովրդական հանդէս, մատակարարելու համար հայ հասարակութեան միջին ընթերցասէր խաւերին լուրջ մտաւոր սնունդ, հանրամատչելի ձեւով: Մեր դիտաւորութիւնն էր միեւնոյն ժամանակ ծառայել խաղաղասիրութեան վեհ գաղափարին, այսպէս կոչուած պասիֆիզմի շարժման, որի նպատակն է հաստատել եղբայրական համերաշխութիւն ազգերի և ժողովուրդների միջև, վերացնել, ջնջել մարդկութեան միջից պատերազմի գաղափարը և նրանից ծագող ահռելի աղէտները, համոզելով մարդկանց և կառավարութիւններին, թէ ինչպէս ամեն մի վէճ, անհամաձայնութիւն զուտ անհատների միջև հնարաւոր է լինում լուծել իրաւախոհութեամբ, դատարանի միջոցով, նոյնպէս և ամեն մի վէճ, կռիւ, անհամաձայնութիւն երկու երկիրների և կառավարութիւնների միջև հնարաւոր է լուծել իրաւախոհութեամբ, միջազգային դատարանների միջոցով: Մի շարժում, որի լաւագոյն կարապետներից և ար-

տայայտիչներից մինը հանդիսացաւ Քրիստոս և նրա աշակերտները, երբ քարոզեցին մարդկութեան՝ «չիք խտիր ոչ հրէի, ոչ հեթանոսի. ամենքդ մի էք», երբ Քրիստոսի ծնունդը հրեշտակները աւետեցին մարդկութեան «Փառք ի բարձունս Աստուծոյ և յերկիր խաղաղութիւն»:

Նմանապէս՝ մեր նպատակն էր մեր հանդէսի էջերում տեղ տալ մեր անցեալ և ներկայ ազգային կեանքի մասին լուրջ ուսումնասիրութիւնների, պատմական տեսութիւնների՝ մի կողմից, միւս կողմից ծանօթացնել հայ հասարակութիւնը եւրօպական և ռուսական լաւագոյն գրողների արտադրութիւնների հետ: Ասենք և այն, որ միաժամանակ մենք ձգտում էինք խրախուսել, առաջ քաշել նոր, սկսնակ, բայց ապագայ խոստացող թարմ, երիտասարդ ոյժեր թէ վիպական և թէ գրական հասարակական և գիտական ասպարէզում:

Մենք գիտէինք, որ ամսագրերը, առ հասարակ, մեր մէջ աջողութիւն և տոկունութիւն չեն գտնում: Մեր առջև էր «Փորձ», «Մուրճ» ամսագրների օրինակը: Բայց այնուամենայնիւ մենք որոշեցինք մի նոր փորձ անել: Մեր փորձը համակրութեամբ ողջունուեց միայն օտար (ռուս, ֆրանսիական, գերմանական, վրացի) մամուլի կողմից, իսկ հայկական մամուլի օրգանները*) կամ չարակամութեամբ ընդունեցին, կամ լռութեամբ և կամեցան մեր փորձը հէնց իր սաղմի մէջ խեղդել: Բայց այդ չարակամութիւնը, դրդուած՝ հայկական սև նախանձից, այն ևս «պատմական ճշմարտութիւնները խարդախողների» կողմից, մեզ աւելի դրդեց յարատևել մեր ջանքերի մէջ:

---

*) Բացառութեամբ «Մշակի», որ, հասկանալի պատճառով, ստիպուած էր լուռ մնալ:

Եւ մենք երկու տարի հրատարակեցինք «Արօրը» և այսօր Թևակոխում ենք երրորդ տարին։

Անկեղծօրէն խօսելով, չենք կարող ասել, թէ մենք իրագործեցինք այն ծրագիրը, որ մշակել էինք։ Ոչ. բայց դրա համար կամքը և ցանկութիւնը չէր, որ պակասում էր մեզ. մեզ պակասում էին միջոցները, որովհետև «Արօրը» երկու տարուայ ընթացքում չունեցաւ այնքան բաժանորդներ, որ կարողանար ծածկել իր ծախքերը և վարձատրել գրողներին, աշխատակիցներին։

Կունենանք այս տարի աւելի բաժանորդներ, քան երկու նախորդ տարիները, այդ չգիտենք. բայց մենք որոշել ենք շարունակել մեր փորձը։

Եւ շարունակելով այս փորձը, իբրև մի գաղափարական գործ, մենք կոչ ենք անում հայ մտաւոր, հայ գրական անդաստանի մշակներին, մանաւանդ երիտասարդ և թարմ ուժերին՝ աջակցել մեզ՝ ջամբելու համար հայ ժողովրդի ընթերցող խաւերին առողջ մտաւոր սնունդ, տարածելու համար հայ ժողովրդի, մասսայի մէջ եւրոպական առաջադիմական մտքերի արտադրութիւնները և վարդապետութիւնները, ուսումնասիրելու համար մեր պատմական անցեալը, մշակելու համար վիպական, բանաստեղծական ճիւղը մեր գրականութեան մէջ և զարգացնելու քննադատական ոգին։

Ինչպէս նախորդ երկու տարիները մենք տուինք մի քանի կապիտալ գործեր—Վիկտոր Հիւգոյի «Իննսուն երեքը» կլասիքական մեծ վէպը, որ առանձին հատորով ևս հրատարակեցինք. Ա. Սարուխանի «Օսմանեան Հայերի Ազգային Սահմանադրութիւնը», որ մի մեծ ... տուար գործ է, ամփոփող իր մէջ և հայոց ... պատմութիւնը. Լեվ Տօլստոյի մի քանի գրուած... ճորտերի ազատագրութեան պատմութիւնը. Լեմ... ուպտի «Հայաստանը» և այլն—նոյնպէս և ...

1912 Թ. ընթացքում մենք կաշխատենք տալ մի քանի նշանաւոր գրուածներ։

Ի նկատի ունենալով. մեր ունեցած սուղ միջոցները և այն աննպաստ պայմանները, որոնց մէջ մենք գործում ենք, մենք կարող ենք ասել. «Ինչ կարող եմ, կատարում եմ. թող կատարէ առաւել յաւ՝ ով կարող է»։

Եւ մենք կը կատարենք, ինչ որ կարող ենք, ինչ որ կը ներեն և կը թոյլատրեն մեր ոյժերը։

Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

Խմբագիր-հրատարակիչ Հ. ԱՌԱՔԵԼԵԱՆ

տան «ՀՅԴ և Ս.», Մուզէյսկի ակր. № 8.